


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* [http://www.armin.am](http://www.armin.am)

*Էլ. փոստ՝* [info@armin.am](mailto:info@armin.am)




Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները`*

*Պաշտոնական կայք`*[**http://www.armin.am**](http://www.armin.am)

*Էլ. փոստ`*[**info@armin.am**](mailto:info@armin.am)


ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ
ԳՐԵՑ
ԱՐՇԱԿ Ա. ԱԼՊՕՅԱՃԵԱՆ
ԳԱՀԻՐԷ
1937
ՏՊ. Յ. ՓԱՓԱԶԵԱՆ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ

## ՏԵՂԱԳՐԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԷ

Ա. ՀԱՏՈՐ

ԳԱՀԻՐԷ
1937

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## Ա. ՀԱՏՈՐ

## Գ. Մաս

## ԿԵՍԱՐԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

Էջ



## Ե. Մաս

## ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՑԻՑ ՀԱՅԵՐՈՒ







Էջ



## Զ. Մաս

## ՀԱՅ ԳՐԶԱԳԻՐՆԵՐ



## Է. Մաս

## ԿԵՍԱՐԱՑԻՔ ԱՐԳԷՈՍԻ ՍՏՈՐՈՏԷՆ ՀԵՌՈՒ

# ՄՈՒՏՔԻ ԽՕՍՔ

«Թէ մոռացայց զքեզ, Երուսաղէմ, մոռասցի զիս աջ իմ, կցեսցի լեզու իմ ի քիմս իմ»։ Թո՛ղ չորնան աչս ու լեզուս, այսինքն թո՛ղ անգործ ու անխօս դառնամ, եթէ մոռնամ քեզ, Երուսաղէմ։

Հրեան լալով այսպէս կ'երդուընար Բաբելոնի աքսորանքին մէջէն՝ իբր հաստատութիւն իր նուիրական Հայրենիքը, իր ծննդավայր քաղաքը միշտ յիշելու իր ուխտին։

Այդ բաժակը, աւելի դառնաթոյն, մեզի ալ խմցուց անողոք ճակատագիրը, պանդուխտ ենք ամէնքս ալ, աշխարհի ամէն կողմերը ցրուած։ Ուր որ ալ լինինք պիտի զգանք միշտ մեր պանդուխտ լինելը, որ է ըսել պիտի չմոռնանք երբեք թէ մենք ալ ունեցած ենք Հայրենիք մը, որ կը խօսի չարունակ մեր հոգւոյն հետ։

Այս զգացումն է որ տարուէ տարի միշտ աւելի կը խորանայ և կը զօրանայ չորս հովերուն նետուած հայ կեանքի բոլոր բեկորներուն մէջ։ Զայդ կ'արտայայտեն մէկ կողմէ՝ մենէ բռնագրաւուած մեր հայրենական ծննդավայրերուն անունով մեր բնաշխարհ հայրենիքին՝ Հայաստանի՝ մէջ նոր քաղաքներ կամ աւաններ կառուցանելու իղձը, և միւս կողմէ անոնց նուիրուած յիշատակարանական հատորներ մատենագրելու ջանքը։

Ի սփիւռս աշխարհի այժմ աւելի քան երբեք վայրավատին Կեսարացի Հայութիւնը այդ իղձն ու այդ ջանքը միանգամայն կը յայտնէ ահա, միաժամանակ թէ՛ մտածելով Նոր Կեսարիայի մասին, և թէ՛ գրականութեան միջոցաւ անմահացնելով հինը։

Այսինքն՝ անիկա ոչ միայն կ'երդնու, այլ խօսքէն գործի անցնելով ամէնուս կը ցուցնէ թէ չէ մոռցած և չի կրնար մոռնալ իր Սիրելի Հայրենիքը։

Երանի՜ իրեն, որ ի վիճակի կը զգայ ինքզինքը՝ գործադրելու թէ՛ իրաւունք մը և թէ պարտականութիւն մը, գէթ իր մտածումին մէջ չմեռցնելու համար նախկինը, ու մաքուր սիրով մը վերստին ծնելու համար նոր մը։

*Ոչ ոք կրնայ մոռնալ իր ծննդավայրը։ Ճշմարիտ է անշուշտ միշտ այս խօսքը, բայց «Կեսարացին չի կրնար մոռնալ Կեսարացին»ը ճշմարտագոյն է անվրէպ։*

*Քաղաքներ կան, որոնք չես գիտեր ինչ մը ունին՝ ինքնայատուկ և հասարակաց դրոշմով մը կնքելու համար իրենց քաղաքացիները, իրենց մէջ ապրին անոնք թէ իրենցմէ դուրս։ Անոնց բառը, յատուկ անուն ըստ ինքեան, զգացումին և դատումին առջեւ հաւասարապէս՝ շուտով կը փոխակերպուի հասարակ կամ հանրական, աւելի ճիշդ գաղափարական անունի մը, երբ նայուի այն յատկանիշներուն, որոնցմով ընդհանրապէս կը մասնաւորուին ու կը բնորոշուին անոնց բնակիչները։*

*Այսպէս է որ, Պոլիսն ու Պոլսեցիները, Վանը և Վանեցիները, Այնթապն ու Այնթապցիները եւայլն ճանչցող մը կրնայ առանց դժուարութեան ըմբռնել* Պոլսեցիութիւն, Վանեցիութիւն, Այնթապցիութիւն *մտապատկերները՝ իբր ընդհանուր գաղափարներ։*

*Յատկութիւններ մը կան, ու յաճախ նաև թերութիւններ գուցէ, կենցաղի և բարքի գիծեր, ձգտումի կերպեր, նկարագրի և — թող շատ չհամարուի այս բառը — աշխարհահայեացքի ուղղութիւններ, որոնց հասարակորդ են այդ քաղաքներէն իւրաքանչիւրին բնակիչները, ամէն մէկը իր ծննդավայրին յատուկ առանձնաւորման շրջանակին մէջ անշուշտ։ Նշաններ են այլեւս ատոնք, որոնցմով թէ՛ իրենք կը ճանչնան զիրար, ու թէ՛ ընդհանրապէս կը ճանչցուին ամէնքէն։*

*Պէտք է սակայն նկատի ունենալ թէ այն նշանները ա՛յնքան իրապէս յատկանիշ են տեղացիութեան մը, որքան հարազատօրէն հայեցի են նաև իրենց խորքին մէջ գէթ։*

*Տեսակ մը առհաւութեան օրէնքով կարծես, ազգի մը ոգին բնորոշող ամէնէն լաւ կամ յոռի գիծերն են որ երևան կուգան անոր անհատներուն անձնական և համայնքներուն հանրային նկարագրին մէջ, երբ միջավայրի կամ այլ նպաստաւորութիւններով պատեհութիւն կ'ունենան անոնք շեշտուած ինքնութեամբ ապրելու։ Ըստ այսմ, հայութեան հոգեւոր ժառանգութիւնը պէտք է միշտ տեսնել, ըստ որակին և ըստ քանակին այս կամ այն կերպով բաշխուած, զօրաւոր ինքնուրոյնութիւն ի յայտ բերող հայկական կամ հայաբնակ քաղաքներու և գաւառներու հայ ժողովուրդներուն մէջ։*

*Ու այս այսպէս է. այդ տեսութիւնը ամենաբարձր աստիճանի մը վրայ ճիշդ է Կեսարացիներուն համար մասնաւորապէս։* Կեսարացիութիւնը, *որքան իրական այնքան ուշագրաւ առանձնաւորում, վիճակ մը լինելէ աւելի ոգի մըն է կարծես, որուն ներքեւ, իբրեւ հասարակաց վերնագրին ներքեւ բնականօրէն կը խմբուին կը խմբաւորուին բոլոր անոնք որ հին Գամիրքի կամ Կապադովկիոյ յետոյ Կեսարական առձայնուած այդ գօտիին տակ են ծնուած, կամ այն տեղ ծնածներու ծնունդ են օտարութեան մէջ, մինչեւ առ նուազն երկրորդ սերունդ։*

*Ի՞նչպէս գոյաւորուած՝ կազմուած է այդ ոգին և կամ ի՞նչ ազդակներ հետզհետէ աւելի շեշտած, զօրացուցած են զայն։ Դիւրին չէ թերեւս մօտենալ հոս ինքնին բարդ այդ հարցին. սակայն կը բաւականանանք հաստատելով միայն սերտ հանգիտութիւնը, որով բոլոր Կեսարացիները բարոյապէս և հոգեպէս կը նմանին միշտ իրարու, իբրև մարդ, այսինքն իբրև ընկերային և հասարակական անհատ նախ, և յետոյ իբրև Հայ, որպէս իր ազգային հոգին ցոլացնող անձ նոյն ատեն։*

*Դիտել կ'ուզէինք տալ միայն թէ անոնք որ այցելած են Կեսարիան, ու ճանչցած՝ Կեսարացին իր հայրենական կայքին և առտնին կենցաղին մէջ, պիտի չվարանէին ընդունիլ թէ անոնք առ հասարակ տեղական և իրենց համար աւանդական ըմբռնումներով նուիրագործուած պատիւրականութեան մըն է որ կը պարտին այն առաւելութիւնները, որոնք բաղկացուցիչ տարրերն են* Կեսարացիութեան *պատկերին։*

*Այդ եղած է իմ համոզումս՝ Կեսարիան ու բազմաթիւ Կեսարացիներ անձամբ ճանչնալէս ետքը։*

*Անուններ կան, որոնք իրենց պատմական հին իմաստէն պարպուելէն շատ վերջն ալ, դեռ միշտ բան մը կը պահեն իրենց վրայ այդ իմաստին մատնանշած վաղնջական ազնուութիւններէն։ Այսպէս մտածեցի նախ,* 1913*ին, երբ իբր տասն օրեր ապրեցայ Կեսարիոյ մէջ, և դիրքիս ու յարաբերութիւններուս հետեւանքով բաւական լայնօրէն ծանօթացայ տեղւոյն Հայութեան կեանքին ու կենցաղին։ Երբեմնի «Կայսերական» այդ քաղաքին մեր ազգակիցներու մէջ ամէն ինչ գտայ հոն՝ տպաւորիչ աստիճանով լուրջ վեհութեան մը վրայ։ Քանի մը ուրիշ գաւառներու ժողովուրդները շատ մօտէն ճանչնալէս վերջն է որ եկեր էի հոն ու անկարելի էր չզգալ քանի մը տեսակէտներով բարձրութիւնը մակարդակին, որուն վրայ էին հոն մարդիկ։*

*Միւսներն ալ անշուշտ ունէին առաւելութիւններ, որոնց անհաղորդ կամ քիչ հաղորդ եղած էին թերեւս Կեսարացիք. բայց յընդհանուրն Կեսարացիինն էր բարձրագոյն մրցանիշը։*

Կրօնական հաստատութիւնները, Վանք, Եկեղեցիներ, քահանայք, պաշտամունք, կրօնի նախանձախնդրութիւն, անթերի պայծառութեան մէջ էին իրապէս։ Կրթական կեանքը, նմանապէս, բարգաւաճ էր ամէն մասամբ՝ ուսմանց բազմաճիւղուած մասնաւորութեանց։ Ազգային Իշխանութենէն ղեկավարուած վարժարաններու միջոցաւ կը ջամբուէր ազգային կրթութիւնը, մանուկանց պարտէզներու, նախնական և բարձրագոյն մէկէ աւելի դպրատուններու և երկրորդականի մը միջոցաւ, ամէնքն ալ ստուգապէս բարեկարգ և յառաջդէմ։ Ս. Կարապետը Վարժապետանոցի դեր կը կատարէր այլևս քաղաքի և գաւառին դպրոցներուն համար, որոնց ուսուցիչներէն շատեր հոն էին ուսած, կորովի և կրթասէր Առաջնորդի մը կազմակերպած կրթարանին մէջ։ Աչքի կը զարնէր ամէնէն աւելի ընդհանուր ուսումնողութիւնը, ուշիմ և ընդունակ պարմանիներ ամէնքն, երկու սեռէ, որոնց մէջ կ'արտափայլէր վաղուան Կեսարացիութիւնը, ամէնքն ալ իրենց խաղերուն մէջ իսկ լուրջ փոքրիկներ, ամէնքն ալ կարծես ապագայի մը ակնկալոյց։ Հապա բարեգործութի՞ւնը, կամ աղքատներու հոգածութեան գործը. ոչ մէկ ուրիշ տեղ այնքան գեղեցիկ և գործնական տեսած եմ այդ կարիքին գոհացմանը համար Կեսարիոյ մէջ եղած կազմակերպութիւնը՝ «Գանձանակ» անուան տակ։ Այս բառը այդ ժողովուրդին հասկացողութեանը մէջ կը նշանակէր ոչ թէ ողորմութեան ծակ տուփը, այլ հասութաբեր կարգ մը կալուածներու խնամակալութիւնը, որուն նպատակն էր աղքատներու հոգէն աւելի աղքատութեան դարմանը։

Ունէին դեռ ուրիշ Մարմիններ, Ընկերակցութիւններ և Միութիւններ, զորս երկար պիտի լինէր յիշել հոս, ամէնքն ալ Առաջնորդարանի հովանիին և հսկակշռին ներքև, և ոչ թէ անոր շուրջ դժուարութիւններ յարուցանելու սարուածքով լարուած ու ատիկա ինծի համար լաւագոյն ապացոյցներէն մին էր՝ ժողովուրդին ազգային հոգիին լրջութիւնը մատնանշող։

Բայց այդ ամէնէն աւելի — կը խոստովանիմ — իմ վրայ հզօրագոյն տպաւորութիւն գործեց Առաջնորդարանով կամ ժողովրդական ինքնաբերականութեամբ կատարուած այն կարգադրութիւնը, որով Կեսարացին ինքզինքին արգիլած էր սրճարան ունենալ։ Այդ ահագին քաղաքին մէջ չկար՝ շատ անգամ վէճի և կռիւի և յաճախ նաև գինարբուքի ասպարէզ բացող այդ ժամադրավայրերէն, որուն ուրիշ քաղաքներու մէջ պատճառած աւերները ծանօթ են շատերուն։ Մարդիկ հոն իրարու կը հանդիպէին առտնին հաւաքումներուն մէջ, ազգականական կամ բարեկամական այցելութեանց առիթներով լոկ, և կամ ազգային և կրօնական հանդէսներու պատեհութեամբ, ագարակային և հանրային արահետներու մէջ սոսկ. այդ պարագաներէն զատ՝ ամէնքը իրենց տան մէջ կամ գործին վրայ միայն կարելի էր գտնել։



Պէտք չեմ տեսներ խօսելու իրենց ընտանեկան բարոյականին, տանտիրական ճարպիկութեան, խնայասէր կենցաղին, ապագայի նախահոգութեան և ընկերային կենցաղի կարգուկանոններուն մասին, որոնք հանրածանօթ են, և որոնց մէջ նահապետական հին բարի կեանքի ըմբռնումները կը ցոլային միշտ։ Աւերիչ նորութիւնները, որոնք իրենց գործը սկսած էին այլուր, դեռ չէին կրցած մուտ գտնել հոս։

Ու այդ բոլորը, առաւելութիւն կամ առաքինութիւն, Կեսարացին կը գործադրէր կամ կը նկատէր իբրև կրօնական և ազգային բարոյականի պարտականութիւն, իբրև հայ հոգւոյ պահանջ։

Հայերէնը քանի մը դարէ ի վեր խօսելէ դադրած այդ ժողովուրդը Հայ էր կատարելապէս, ի՛նքն ամէնէն առաջ կը զգար զայդ. ու իրեն համար պարծանքի և մխիթարութեան ճշմարիտ հիմնակէտ մըն էր այդ զգացումը. իսկ օտարները իբր այն նոյն իսկ կը յարգէին զանոնք։

Ես որ այնքան սիրած էի փաստարկել միշտ թէ Հայ լեզուն ազգային կեանքի ամէնէն ազդու պահպանակներէն մին է եղած մեր մէջ, տեսակ մը շուարում կը զգայի մէջս այս իրողութեան ի տես, շուարում՝ որ յետոյ Եգիպտոսի մէջ ևս քանիցս պիտի կրկնուէր, երբ տեսնէի Նուպարն ու Մելգոնեանները, որոնք գրեթէ չէին հայախօս, ու տեղեկանայի թէ իրենց մայրենի լեզուն շատոնց մոռցեր էին Կարապետ Գալուստը և Գրիգոր Եղիայեանը։ Այնպէս որ հիմա կանգ առած եմ այլ ևս այն համոզումին առջև թէ սիրտն է ազգային կենսունակութեան մեծագոյն գործօնը և կեդրոնականը նոյն իսկ. գործօն՝ որուն մշակման, ջեռուցման և արդիւնաբերութեան ամէնէն մեծ սատարն է եղած միշտ Եկեղեցին. իսկ այդ տեսութեան ամէնէն համոզիչ ապացոյցներէն մին է, ինձ համար Կեսարացին ինքնին, որուն հոգւոյն հրայրքն է եղած գերազանցօրէն իր Մայրենի Եկեղեցիին սէրը։ Իրողութիւն մըն է ատիկա, զոր հետզհետէ աւելի անտարակուսելի դարձուցած են Կիւմիւշեաններու, Լսաեաններու, Կիւլպէնկեաններու, Մելգոնեաններու և այլն նման հոյակապ Կեսարացիներու օրինակները և Սփիւռքի մէջ վաղուց և դեռ այժմ այնքան սիրուած անոնց հայրենակիցներուն եկեղեցանուէր ազգասիրութիւնը։

Լաւ ըմբռնել կարենալու համար Կեսարացիութիւնը, Հայութեան կերպասին ամէնէն ոսկեհուռ այս կտորը, պէտք է ճանչցած ըլլալ կամ ճանչնալ Կեսարիան։ Այս հատորը, այնքան արժանիքով յօրինուած իր մեծահմուտ և բազմաշխատ հեղինակէն, գեղեցիկ կերպով կը կատարէ այդ գործը, լիովին յիշեցնելով զայն անոնց որ տեսած են զայն և ապրած անոր մէջ ու ճանչցնելով անոնց որ չեն ունեցած այդ պատեհութիւնը. բայց ամէնուն ալ հաւասարապէս ներկայացնելով այն կարեւոր դերը և նշանակութիւնը, զոր ամենահեռաւոր անցեալէն մինչև դեռ երէկ ունեցած է անիկա պատմական, պետական, ժողովրդական, ու մանաւանդ հայկական տեսակէտներով։

Գիրք մը ըլլալէ աւելի Գանձարան մըն է այս հատորը, որուն մէջ գիտական կատարելագոյն ճշդութեամբ և վերլուծական մեթոտի խղճամիտ կիրարկութեամբ կը տեսարանուին մեր ցեղին ամէնէն պատուաբեր մէկ ժողովուրդին արժանիքները, դարերու երկայնքին վրայ և կեանքի դժուարագոյն պայմաններուն մէջ ի յայտ բերուած։

Ինծի համար Հայ կամքին և ժողովրդական տաղանդին փառաւորումն է ան. և այս իսկ պատճառաւ պիտի արժէր որ ամէն Հայ ունենար զայն։ Բայց ամէնէն աւելի պանծացումն է անշուշտ Կեսարացիին հոգւոյն, և կը խորհիմ թէ ամէն Կեսարացի, հայախօս կամ ոչ նոյն իսկ, պիտի ցանկայ ունենալ զայն իր տան մէջ, ինչպէս նախնեաց աճիւնները պարունակող ոսկեկիտուած սափոր մը, զոր հիները յարգանքով կը պահէին իրենց ընտանեկան սըրբութեանց կարգին։

21 Ապրիլ 1937

Երուսաղէմ



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հրատարակիչ ըլլալու մարմաջը չէ, որ Վարչութեանս թելադիր եղած է Պատմութիւն Հայ Կեսարիոյ նման նիւթական խոշոր զոհողութիւն պահանջող մեծագանգուած գրքի մը հրատարակութիւնը ստանձնելու, այլ երախտագիտութեան զգացում մը՝ անոնց հանդէպ, որոնք Հայ Կեսարիան՝ մշակոյթի վառարան, ցեղային տոկունութեան դարբնոց մը ըրին։

Հայ Կեսարիոյ Պատմութիւնը միայն ընթերցանութեան գիրք մը չէ, այլ Արգէոսի զաւակներուն՝ դարերու քրտինքով և արիւնով շաղախուած՝ այն հոյակապ Յուշարձանն է, որուն ճարտարապետը նոյն ինքն նահատակ Կեսարացին եղած է։

Այս Կոթող-Յուշարձան Մատեանը որպէս անմահութեան դափնեպսակ, հիւսուած է բազմահազար Կեսարացի հայորդիներու կանաչ կեանքի տերեւներով։

Յարգանքի սրտաբուխ տուրք մը, անյետաձգելի նուիրական պարտականութիւն մը ունինք յիշատակին անոնց, որոնք, հայրենի բոյնէն դաւաճանօրէն խլուելով անջրդի անապատներու մէջ խոշտահար ինկան, վայրագօրէն կացինահար եղան՝ բարբարոս մարդագայլերու կողմէ։ Մեր Սիրելիները այս երկնքի տակ իրենց սեփական գերեզմաններն իսկ չունեցան։ Հայ Կեսարիոյ Պատմութիւնը անոնց կեանքին ու գործունէութեան յիշատակարանն է։

Նիւթապէս փշրուած, մարմինով քայքայուած Հայ Արգէոսի բեկորները ի մի կը հաւաքենք մենք այս հատորներուն մէջ, այդ բեկորներուն մէջ անմահ մնացած բարոյական արժէքները կը համադրենք, վերակերտելու, վերածաղկեցնելու համար Նոր Կեսարիան:

Հինին նշխարները, որբացած մասունքները կ'ուզենք օգտագործել Նորին կառուցման համար։

Հայ Կեսարիան ներշնչարանը պիտի ըլլայ Սփիւռքի տարածուած մեր հայրենակիցներուն։ Արգէոսի հայրական գուրգուրանքէն զրկուած մեր եղերաբաղդ հայրենակիցներուն յուշագիրքը և այլատեղումի ճանապարհին վրայ գտնուող մեր նորածիլ սերունդին Տապանակ Ուխտին է այս մատեանը։

Այս բազմածախս և բազմաբովանդակ գրքի հրատարակութեամբ մենք այն գոհունակութիւնը ունինք թէ տար աշխարհի մէջ կաթիլ կաթիլ մաշուող մեր ծննդավայրին բեկորներէն կը վերակերտենք Հայ Կեսարիոյ դարաւոր կեանքի բարոյական աշխարհը և Հայ բանա-

սիրական անդաստանը կը հախացնենք անտիպ մնացած բարքերը, սովորոյթները, թողուն մնացած ազգագրական արժէքները իմի հաւաքելով։

Եթէ մենք, fապաuprodային փլուզումէ վերապրողներս չկարողանանք այդ պարտականութիւնը կատարել, յաջորդ սերունդը հազիւ թէ ժամանակ պիտի ունենայ այդ մասին մտածելու։

Սփիւռքի մէջ չկա՞յ կեսարացի մը, որ հայասպան մեծ եղեռնին զոհ տուած ըլլայ իր հոգեհատորներէն, սիրելիներէն մէկ քանին, որոնց գերեզմանները անյայտ մնացած են։ Արդեօ՞ք հայր մը իր զաւկին, զաւակ մը իր ծնողաց և կամ ազգականին գերեզմանին վրայ որպէս գոյգն պարտականութիւն, ի յիշատակ իր սիրելիներուն, տապանաքար մը, յիշատակի կոթող մը պիտի չուզէ՞ր տնկել եթէ հնարաւորութիւն ունենար։ Ահա այդ պարտականութիւնն է որ կը յիշեցնենք մենք և կ'առաջարկենք որ փոխան տապանաքարի կամ կոթողի, Նոր Կեսարիոյ կառոյցքին մէջ քար մը աւելի զետեղելու հնարաւորութիւն տան մեզի, գտնելով օրինակ մը այս գիրքէն, որուն բովանդակ հասոյթը, իր մայր դրամագլուխով միատեղ, պիտի յատկացուի Խ. Հայաստանի մէջ կառուցուող Նոր Կեսարիոյ շինարարութեան։

Ուրեմն մենք Հին Կեսարիոյ տաղձը պիտի օգտագործենք Նորին կառուցման համար. որուն համար կը յուսանք թէ մեր Կեսարացի հայրենակիցները լայնօրէն պիտի օժանդակեն։

* * *

Կեսարիոյ և Շրջ. Հայր. Միութեան Գահիրէի Վարչութիւնը երեք առաջադրութիւններ ունէր իր ծրագիր-կանոնագրով՝

Ա.— Օգնել Կեսարիոյ որբերուն։

Բ.— Կառուցում Նոր Կեսարիա աւանին Խ. Հայաստանի մէջ։

Գ.— Հրատարակութիւն «Հայ Կեսարիոյ Պատմութիւն»ի։

Ա. և Բ. առաջադրութիւնները ի գլուխ հանելու համար Գահիրէի Վարչութիւնը իր առաւելագոյնը ի սպառ դրաւ և այսօր ան հպարտ է որ շնորհիւ Եգիպտաբնակ Կեսարացի հայրենակիցներու պարտաճանաչ ոգիին և գիտակից օժանդակութեան կրցաւ իրագործել ծրագրային յանձնառութիւնները։

Հայաստանի մէջ Նոր Կեսարիա աւանին հիմնադրութեան գաղափարին գործնականացման քայլերը առնուեցան Ամերիկաբնակ մեր հայրենակիցներու կողմէ, սակայն առաջին նուագ հնչուն մասնակցութիւն բերողը եղաւ Գահիրէն, յանձին Կարապետ և Յարութիւն Սարըեան հարազատներու, որոնց օրինակելի ժեստը աշխատութեան և զոհողութեան գրգիռը հրահրեց մեր հայրենակիցներու շրջանակին մէջ։

Մեր աշխատանքը նոր է որ կ'ոկսի ձև և կերպարանք առնալ։ Նոր Կեսարիան սփիւռքի Կեսարացիներուս մագնիսը, կեդրոնաձիգ ուժն է, անոր պիտի ուղղուին մեր հայեացքը և աշխատանքները յետ այսու։

Գ. Հայ Կեսարիոյ Պատմութիւնը գրի առնելու գաղափարին հայրութեան պատիւը կը պատկանի, Կեսարիոյ Վարժարանաց երբեմնի



ուսուցիչ յաւէտ ողբացեալ Պ. Եղիազար Եղիազարեանի։ Անոր վաղահաս և անակնկալ մահը Գահիրէի Վարչութիւնս ժառանգորդ դարձուց Հայ Կեսարիոյ պատմութեան հրատարակման գաղափարին։

Իր կոչումին և ստանձնած յանձնառութեան ծանրութեան գիտակ, Վարչութիւնս հաւատքով և խանդավառութեամբ մօտեցաւ այս գործին։ Առանձին նամակներով, շրջաբերականներով, լրագրական յայտարարութեամբ հրաւէր կարդաց Կեսարացի մտաւորականներուն որպէս զի գրի առնեն Հայ Կեսարիոյ Պատմութիւնը։

Մեր կոչերուն շատ քիչեր պատասխանեցին։ Ո՛չ ոք ամբողջական, լրիւ գործ մը գրի առնել յանձն կ'առնէր, այլ մասնակի աշխատանքներ միայն՝ այս կամ այն գլուխը խմբագրելու։

Ընդառաջելով Վարչութեանս առաջարկին, միայն Պ. Արշակ Ալպօյաճեանն էր որ յանձն առաւ պատմական խոր հմտութիւն, դէպքերը համադրելու կարողութիւն պահանջող գիրք մը խմբագրելու աշխատանքը։

Եթէ Պ. Արշակ Ալպօյաճեանի նման տքնաջան աշխատող բանասէր մը չյօժարէր, Հայ Կեսարիան իր պատմագրողը պիտի չունենար, որուն համար մենք՝ յանուն Կեսարիոյ և շրջակայ գաւառի հայութեան շնորհակալութիւն կը յայտնենք։

10 Հոկտեմբեր 1936
Գահիրէ

ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ
ՄԻՈՒԹԵԱՆ ԳԱՀԻՐԷԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Այս հրատարակութեամբ հետապնդուած նպատակը Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան Գահիրէի Վարչութիւնը պարզած է արդէն:

Եթէ այդ նախաձեռնութիւնը չունենար Հայրենակցականի Վարչութիւնը, այս տողերը գրողը բնաւ յանդգնութիւնը պիտի չունենար իր անձնական ուժերուն վստահելով այսքան բազմածախս հրատարակութեան մը վրայ նետուելու:

Գաղափարին հեղինակութեան մէջ հետեւաբար կը խոստովանիմ թէ մաս եւ բաժին չեմ ունեցած եւ անիկա կը պատկանի սոսկ այդ մարմինին որ իր նպատակներուն մէջ ունեցած էր այս տեսակ աշխատասիրութեան մը խմբագրութեան գաղափարը ու զայն գործադրութեան դնելու աշխատանքը Հայրենակցականի վարչութիւնը պատիւ ըրաւ ինծի վստահելու, անշուշտ նկատի ունենալով անցեալ աշխատութիւններս եւ դէպի այս տեսակ գործի մը իմ նախասիրութիւններս:

Արդարեւ տակաւին հազիւ երիտասարդական տարիքի հասած, այսինքն 20-21 տարեկան, Եւրոպական Թուրքիոյ մէկ քանի քաղաքները այցելելու պատեհութիւնը օգտագործած էի եւ պատրաստած՝ «Հայք ի Ռումէլի» անուն մօտաւորապէս 1000 էջ ձեռագիր աշխատութիւնը, զոր ներկայացուցեր էի 1905ին Յովսէփ Իզմիրեանց գրական Մրցանակի Յանձնաժողովի գնահատութեան: Յանձնաժողովը զայն վարձատրեց Ա. մրցանակով եւ 50 ոսկի դրամական նուէրով:

Գաղութի մը մասին ցոյց տրուած այս հետաքրքրութիւնը որ գնահատուած եւ օգտակար դատուած էր, խթան մը եղաւ մղելու համար զիս որ ընդհանուր Հայ գաղութներու պատմութեան մը նուիրուիմ, աշխատութիւն զոր աւելի քան 30 տարիներէ ի վեր կը հետապնդեմ եւ արդէն իսկ պատրաստ ունիմ հատորներու շարք մը, եւ հաւաքած եմ բազմաթիւ վաւերագիրներ, տեղեկութիւններ, ծանօթութիւններ եւ նօթեր, որոնք չեմ գիտեր թէ պիտի կարենա՞մ օր մը լրացեալ վիճակի մէջ ի լոյս ընծայել: 30 տարիներէ ի վեր չըսելու համար մոլութիւն մը, մենամոլութիւն մը եղած է ինծի համար հին դրամներու,



դրոշմաթուղթի, գիրքի եւ այլի հաւաքածոներ կազմողներու նման Հայ գաղութներու մասին ամէն տեսակ տեղեկութիւններ հաւաքել: Այնպէս որ Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան հրաւէրին սիրով ընդ առաջ գացի, եւ հոս կրնամ յայտարարել թէ առանց տարիներէ ի վեր կատարած պրպտումներուս եւ հետազօտութիւններուս անհնար պիտի ըլլար համեմատաբար կարճ ժամանակի մը մէջ երեւան հանել այս գործը որուն ձեռնարկած եմ միայն 1932ին:

Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան վարչութեան նախնական ծրագիրը այս ընդարձակութիւնը նախատեսել չէր տար, սակայն երբ գործի ձեռնարկեցի, զայն որքան կարելի է ամբողջական ընելու փափաքը զոր ես ունեցայ անոր տուաւ ծաւալ մը որ ծրագրուածին քառապատիկին կը հասնէր:

Հոս պարտականութիւն կը համարեմ յայտարարելու թէ մեր Հայրենակցականը ինքն ալ բարի նախանձով, իր առաջադրած գործին որքան կարելի է խնամեալ ու կատարեալ ըլլալու եռանդովը առլցուն, ազնիւ եղաւ չկաշկանդելու զիս եւ ո եւ է զոհողութեան առջեւ չընկրկեցաւ եւ հնարաւոր միջոցները տրամադրեց: Այս տեսակէտով ինքզինքս երախտապարտ կ'զգամ եւ կը փափաքիմ որ այս հատորին ընթերցողներն ալ գնահատեն այս յօժարակամութիւնը որ Հայրենակցականը ցոյց տուաւ, քանզի առանց անոր անհնար պիտի ըլլար այս գործը իր այս ձեւովը երեւան հանել:

Ընդարձակութիւնը որ ունի իմ ծրագիրս, թերեւս ոմանց համար տարապայմանօրէն ծաւալուն նկատուի եւ զուցէ նոյնիսկ աւելորդ կերպով ծանրաբեռնուած, սակայն իմ գլխաւոր նպատակս եղաւ, քանի որ այս սահմանուած էր Կեսարիոյ Հայութեան յիշատակը յաւերժացնելու, եւ անոր անցեալ կեանքին մնայուն յիշատակարանը կազմելու, որքան կարելի էր բան մը դուրս չթողուլ Կեսարիոյ Հայոց կեանքէն, կենցաղէն եւ պատմութեան դրուագներէն:

Նոյնպէս բնաւ չնկատեցի Կեսարացի Հայերը իրենք իրենց մէջ կղզիացեալ եւ ուրիշ տեղերու Հայերուն հետ չկապուած միութիւն մը, այլ զանոնք համարեցի մէկ մասը ընդհանուր հայութեան եւ անոր հետ կապուած եւ հաղորդակից եւ անոր հետ լծորդուած նոյն զգացումներով եւ գաղափարներով: Արդարեւ Կեսարացի Հայերը իբր Հայ, ընդհանուր հայութենէն անբաժան էին, եւ անոր հետ ունէին ո՛չ միայն արեան եւ ցեղային կապեր այլ նաեւ մշակութային առընչութիւններ, եւ իբր գաղութ Կապադովկիոյ Հայերը մայր բունին ազդեցութիւնը կրած էին եւ փոխադարձաբար ներգործած՝ անոր վրայ, հետեւաբար միշտ կապ եւ յարաբերութիւն ունեցած էին Հայկական արմատին հետ որուն բնավայրին անմիջական դրացի շրջանակի մը մէջ կ'ապրէին, որ իր բնական նկարագրով եւ իր քաղաքական կա-

ցութեամբ իւր միջավայր իր ազդեցութիւնը ունեցած էր իր բունէն բաժնուած այս ոստերուն վրայ:

Հետեւաբար պատմականութիւն համարեցի ներկայացնելու նաեւ միջավայրը ուր Կեսարացի Հայը գործեց իր գործօն եւ պայմանները՝ որոնց մէջ անիկա ապրեցաւ:

Անկէ առաջ եկաւ պէտքը՝ տալու նաեւ աշխարհագրական տեղեկութիւններ Կապադովկիոյ վրայ եւ ներկայացնելու այդ երկրամասին խաղաղական կեանքը եւ հին ծնունդ առնող կրօնական եւ մշակութային շարժումները, որոնց Հայերը բերած էին անխուսափելիօրէն իրենց մասնակցութիւնը իր երկրին վաղեմի բնակիչները:

Հարկադրական դարձաւ ուրեմն տալ նաեւ երկրին պատմութիւնը շրջան առ շրջան եւ կցել անոր իւրաքանչիւր պատմական ժամանակաշրջանի մէջ Հայոց կեանքը:

Այսպէս պէտք եղաւ հնագոյն եւ անյիշատակ ժամանակներէ սկսեալ մինչեւ մեր օրերը, պատկերացնել թէ՛ երկրին վիճակը եւ թէ՛ շրջապատող պայմաններու մէջ Հայոց դերը եւ իրենց բարգաւաճումը կամ նուազումը՝ իբր հետեւանք զանազան դէպքերու եւ պարագաներու:

Առանց այս համադրութեան անկարելի պիտի ըլլար վեր առնել Հայոց դերը եւ նշանակութիւնը եւ ցոյց տալ Կեսարացի Հայուն խոկական արժանիքն ու շօշափելի առաւելութիւնները, բաղդատմամբ իր դրացիներուն եւ բնակիչներուն, երկրին պատմութեան զանազան շրջաններուն:

Այս ընդհանուր Կապադովկիոյ Հայոց վերաբերեալ տեղութիւններէն յետոյ հարկ էր ներկայացնել Կեսարիոյ Հայ արքեպիսկոպոսական թեմին հին եւ նոր սահմաններուն մէջ գտնուող իւրաքանչիւր հայաբնակ վայրի, քաղաքներու եւ գիւղերու տեղագրութիւնը. Հայ բնակչութեան կեանքը, իր կրօնական ու կրթական հաստատութիւնները, եւ իրենց թիւը, կենցաղը եւ դերը. ինչպէս նաեւ համայնքին կեանքը, իր կրօնական, իմացական եւ մտաւորական, հասարակական, քաղաքական եւ տնտեսական դիմայեղութիւններով, Կեսարացիներու նկարագրին յատկանշական գիծերը, իրենց լեզուին առանձնայատկութիւնները, ճաշն ու կայքը, տուն-տեղը, հագուստ-կապուստը, ուտելիք-խմելիքը, ինչպէս նաեւ ընտանեկան ներքին կեանքը՝ իր կենցաղական սովորոյթներով, իր հաւատալիքներով, նախապաշարումներով, ժողովրդային գիտութեամբ եւ բանահիւսութեամբ, իր աւանդավէպերով, գրոյցներով, առակներով եւ առածներով, եւ իր ստեղծագործական արտադրութիւններով, ինչպէս նաեւ գրչագիրները՝ իրենց յիշատակարաններով:

Արգէոսի շուրջը հաւաքուած Հայերու կեանքը այդ միջավայրին



մէջ կարելի էր ներկայացուած համարել, այս սահմանին մէջ, սակայն նկատելով որ Կապադովկիոյ Հայերը իրենց ծննդավայրէն հեռու ալ ունեցած են Հայ ազգին կեանքին մէջ կարեւոր դեր մը եւ ունին նշանակելի տեղ մը բոլոր առեւտրական եւ ճարտարարուեստական կեդրոններու մէջ եւ բոլոր հայաբնակ վայրերու մէջ. Կեսարիա մէկը եղած է որ ամէնէն շատ մարդ տուած է ազգին, անհրաժեշտ էր ներկայացնել նաեւ Արգէոսի ստորոտէն հեռանալով այլուր իր գաղթական տարածուած Հայոց ճիւղաւորումը եւ մանաւանդ իրենց Հայ ազգին ընծայած կարեւոր դէմքերը:

Ահա թէ ինչպէ՞ս ընդլայնուեցաւ ծրագիրը, որ իր նախնական ձեւին մէջ չունէր ո՛չ այս համադրութիւնը եւ ո՛չ ալ այս ամբողջականութիւնը:

* * *

Ընդգրկուած այս լայն ծրագիրը իրագործելու համար իմ կարելիս ըրած եմ, սակայն չեմ կրնար ես դատել թէ ո՞ր աստիճան յաջողած եմ: Անիկա քննադատներուն կը մնայ ճշդել:

Ես միայն կրնամ առանց տարակոյսի յայտարարել թէ այս գործը թերեւս իր կարգ մը թերութիւններէն զերծ եւ աւելի կատարեալ պիտի ըլլար, եթէ անոր խմբագրողը՝ գործին պատրաստութեան մէկ կարեւոր շրջանին հարկադրուած չըլլար ապրելու հոգեկան տագնապի մէջ, որ իրեն պատճառեցին անխիղճ վրիժառուներ:

Նոյնպէս անիկա թերեւս աւելի ճոխ ու աւելի հարուստ պիտի ըլլար իր աղբիւրներով, եթէ փոխանակ խմբագրուելու Եգիպտոսի մէջ, գրի առնուած ըլլար ուրիշ կեդրոնի մը մէջ, ուր կարելի ըլլար օգտուիլ հանրային կամ ազգային մատենադարաններէ եւ հնագիտական հաւաքածոներէ: Անկէ զատ պիտի խնդրէի որ ամէն ընթերցող այս գիրքին ընթերցման պահուն, գիտնար թէ այս գիրքին պատրաստութեան ատեն իմ առաջին մտատանջութիւնս եղած է աղբիւրներու եւ վաւերագիրներու խղճամիտ կիրարկութիւնը եւ ամէն ջանք ի գործ դրուած է որպէսզի իւրաքանչիւր տող եզրակացութիւնը ըլլայ քննութեան մը եւ զանազան աղբիւրներու բաղդատութեան:

Մանաւանդ հին շրջաններու համար ջանացած եմ օգտուիլ ամէնէն վերջին հետազօտութիւններու արդիւնքներէն, եւ գիտութեան տուեալներէն, յաճախ զանազան կարծիքներու մէջ նախընտրելով այն որ ինծի բանաւոր թուած է: Զուգեցի անպատասխանատու հաւաքողի դերին մէջ մնալ ընդօրինակելով զանազան գիտուններու յայտնած կարծիքները եւ տեսութիւնները, այլ զանոնք իրարու հետ համաձայնեցնելու յանդգնութիւնը ներեցի ինքզինքիս, որպէսզի կանոնաւոր շարայարութիւն մը երեւան բերուի եւ ընթերցողը կարծիքներու քաոսի մը մէջ չմոլորի անառաջնորդ:

Եւ որպէսզի ընթերցողը երբ տարակուսի յայտնուած տեսութեան մը վրայ եւ ինքն ալ համոզում գոյացնել ուզէ, դիւրութիւն ունենայ քննել, ջանացած ենք մինչեւ նշանակել այն աղբիւրները որոնք գործածած ենք, եւ բոլոր հնարաւորն ի գործ դրած ենք որպէսզի օգտուիլ ուղղակի բնագիրներէն, վասնզի փորձառաբար համոզուած ենք թէ երբեմն թարգմանութեանց եւ նոյնիսկ արտագրութիւններու ատեն փոփոխութիւններ մտած կամ այլայլումներ պատահած են: Ասոր համար բնագիրները տեսնել ամենէն ապահով միջոցն էր, ուստի աշխատած ենք բոլոր հայերէն, ֆրանսերէն, անգլերէն եւ թուրքերէն գործերը որոնք յիշատակուած են, ուղղակի տեսնել:

Դժբախտաբար անխուսափելի եղած է նոյն բծախնդրութիւնը գործադրել նաեւ յունարէն եւ գերմաներէն աղբիւրներու մասին, որոնցմէ օգտուած ենք միջնորդութեամբ, այսինքն օգտուելով ուրիշ հեղինակներու մէջբերումներէն:

Այս գործը իբր շէնք կամ կառուցում, իրեն աւանդ ունի, ինչպէս պիտի նշմարէ ուշիմ ընթերցողը, առաւելապէս Հայ եւ օտար պատմիչներէ, հնագիտական, պատմական եւ ուղեգրական հին եւ նոր հեղինակութիւններէ, ժամանակակից լրագրութենէ, հրատարակուած կամ անտիպ ձեռագիրներու յիշատակարաններէ եւ մի քանի Կեսարացիներու ձեռագիր յիշողութիւններէն քաղուած տեղեկութիւններ:

Նախապէս տպագրեալ գործեր — գիրք կամ լրագիր — հակառակ անոր որ իրենց արժէքով եւ տուած շատ կարեւոր տեղեկութիւններով, գուցէ հայթայթած են այս համագրութեան գլխաւոր հիմնաքարերը, չեմ յիշատակեր մի առ մի, վասնզի արդէն իրենց կիրարկութեան չափովը, էջերով եւ թիւերով նշանակուած են, սակայն չեմ կրնար չյայտնել թէ շնորհապարտ զգացումներ տածած եմ մինչեւ անոնց հեղինակներուն համար երբ տեղեկութիւն մը, ծանօթութիւն մը կամ լուսաբանութիւն մը քաղած եմ անոնցմէ:

Իսկ բոլորովին անտիպ գործեր էին հետեւեալները, որոնք այս շէնքին բարձրացման նպաստեցին:

1.— Ասոնց մէջ առաջին տեղը կու տամ Հանգ. Եղիազար Եղիազարեանի կիսատ մէկ աշխատութեանը որ աւելի նկարագրականն էր Կեսարիոյ քաղաքին եւ շրջակայից, գրուած սահուն ոճով մը եւ նկարուն գրչով մը, հայկաբանի մը յատուկ լեզուական ճոխութեան առատութեամբ եւս պճնուած: Ամերիկայի մէջ գրի առնուած այդ նկարագրութիւնները որոնք հայրենաբաղձ զգացումով մը կը ներկայացնէին իր ծննդավայրը, իբր ականատես մը նկարուած կենդանի պատկերներ, գրեթէ ամբողջութեամբ ագուցուած են գործիս մէջ, որով հանգուցեալին թէ՛ կիսատ մնացած գործը փրկուած եւ թէ իր գործը հրատարակուած տեսնելու իղձը իրագործուած է:



Պարտականութիւն կը համարեմ ուրեմն հոս յիշատակել երախտաւոր իր անունը, ինչպէս նաեւ շնորհակալ ըլլալ իր այրիին եւ զաւակներուն որոնք ընդ առաջ երթալով Հայրենակցականի փափաքին տրամադրեցին իր ձեռագիրը:

2.— Երկրորդ տեղը կու տամ Տիար Բարսեղ Օհանեանի (Աղեքսանդրիա) մեկ ուսումնասիրութեան՝ «Կեսարիոյ դերը Հայ յեղափոխութեան մէջ» (տես, էջ 1331-1426) որ բարեկամս իմ խնդրանքովս ստանձնեց պատրաստել, թողլով զիս պարտական իր յօժարակամ պատրաստակամութեան համար:

Այս աշխատութեան Տիար Բարսեղ Օհանեան կցած էր ԲԱՑԱՏՐԱԿԱՆ մը որ հոս կը ներկայացնեմ, նոյնութեամբ, ծանօթացնելու համար ընթերցողները, այն ուղղութեան որ ընտրած է ան, իր այս աշխատութիւնը պատրաստելու համար:

Անիկա կ՚ըսէ.

«Այս ուսումնասիրութիւնը գրական ոչ մի յաւակնութիւն ունի. պատմական տեսակէտով ալ շատ թերի է: Կեսարիոյ յեղափոխական գործունէութիւնը՝ եւ անոր յաջորդող մարտիրոսագրութիւնը, մէկէ աւելի հատորներու նիւթ կրնայ հայթայթել, սակայն այն տեղը որ ինծի տրամադրուեցաւ այս հատորին մէջ՝ չէր թոյլ տար լայն գիծերու մէջ ընդհանուր ակնարկ մը նետելէ աւելին: Ուստի, իմ նպատակս եղած է այս սեղմ պայմաններու մէջ՝ ցոյց տալ Կեսարիոյ անձնազոհութեան աստիճանը՝ Հայ ազատագրումի մարտնչումին մէջ. եւ այսպէս մոռացութենէ ազատել դէպքեր եւ դէմքեր որ մինչեւ ցարդ անծանօթ կը մնային: Այս տեսակէտով կը կարծեմ թէ՝ այս կիսատ աշխատութիւնս իր շահեկանութիւնը պիտի ունենայ:

Իմ տեղեկութեանց աղբիւրներն եղած են, կուսակցական գործիչներ, դերակատարներ, բոլորովին չէզոք ականատեսներ, աքսորէ, բանտէ ազատուածներէ, տեղահանուածներէ քաղուած տեղեկութիւններ, ընտանեկան, բարեկամական նամակներէ առնուած նօթեր, Կեսարիոյ կախաղաններու եւ տեղահանութեանց մասին 1919ին Հալէպէն ինծի ղրկուած գաղտնի ընդարձակ տեղեկագիր մը, Տէր-Վանքի վանահայր Դանիէլ վարդապետի ձեռագիր ինքնակենսագրականը. վերջապէս Սահմանադրութենէն եւ մինչեւ իր տեղահանուիլը Կեսարիոյ ամէն դէպքերուն ականատես հայ մտաւորականի մը՝ «Իրազեկի» ձեռագիր մէկ ընդարձակ աշխատութիւնը՝ թանկագին վաւերաթուղթ մը, զոր Հայ-Կեսարիոյ հեղինակը Արշակ Ալպօյաճեան ազնուաբար ինծի տրամադրեց, անկէ ամբողջացնելու համար Կեսարիոյ կախաղան հանուածներու ցանկը՝ եւ տալու հա-

մար անոնց հակիրճ կենսագրականները. ինչպէս նաեւ տեղահանու-
թեանց վրայ մանրամասնութիւններ:

Բացի այս աղբիւրներէն, թուականներու ճշդումին, վաւերաթուղթերու եւ կենսագրականներու համար օգտուած եմ նաեւ կուսակցական թերթերու եւ այլ հանդէսներու մէջ հրատարակուած յօդուածներէ ու ի միջի այլոց հետեւեալ հրատարակութիւններէն:

Վահան Շահրիմանի՝ *«Հայկական խնդրին ծագումը»:*

Հնչակեան Պրոշիւր՝ *«Բռնութեան դէմ»:*

Մ. Ճիզմէճեանի՝ *«Պատմ. Ամերիկահայ Քաղ. Կուսակցութեանց»:*

Եր. Մեսիաեանի՝ *«Դրօշին տակ»:*

Տօքթ Վ. Թորգոմեանի՝ *«Կենսագր. Տօքթ. Ռուբինեանի (Հանդէս Ամսօրեայ)»:*

Գ. Օտեանի՝ *«Ռուբինեան (Դաս. փիլիսոփայութեան)»* եւայլն:

Ալպօյաճեանի եւ իմ մէջ կայացած համաձայնութեամբ, բոլորովին ազատ ձգուած ըլլալով անկախօրէն արտայայտել իմ խորհելակերպս, հատորին այս մասին ամբողջ պատասխանատուութիւնը կը պատկանի ինծի» *անշուշտ անոր կցուած պատկերներէն դուրս, վասնզի անոնց ընտրութեան մէջ Տիար Բարսեղ Օհանեան ոչ մէկ բաժին ունեցած է, ինչպէս խնդրած է ծանուցանել այս պարագան:*

*Հոս պարտականութիւն ունիմ հրապարակաւ յայտնել իմ շնորհակալութիւններս մեծայարգ բարեկամիս, իր ընծայած ձեռնտուութեան համար, ստանձնելով պատրաստել գիրքիս փափուկ բաժիններէն մին, որուն ինչ ինչ մասերուն համար իմ ունեցած վերապահումներս արդէն արտայայտուած ըլլալով վերստին աւելորդ կը դատեմ խօսիլ:*

*3.— Պարտաւոր եմ յիշել նաեւ երկու ձեռագիր ընդարձակ աշխատութիւններ, մին* «Հայկական խաչելութիւնը» *նուիրուած ընդհանրապէս Հայկական բնաջնջման բոլոր ծրագրին եւ միւսը՝* «Կախաղանն ու եաթաղանը Թուրքիոյ Հայաբնակ ու արաբախօս նահանգներուն մէջ՝ 1915—1919» *յատկացած նկարագրելու մասնաւորապէս Կեսարիոյ բանտին մէջ գործադրուած բազմապիսի տանջանքները եւ չարչարանքները, ինչպէս նաեւ Կեսարիոյ Հայոց տեղահանութիւնը, կամ մէկ խօսքով իրենց Գողգոթան, որուն մասնակից եղած է նաեւ ինքն՝ «Իրազեկ», կրթական ալեհեր եւ վաստակաւոր մը, որ ազնուական վեհանձնութիւնը եւ անձնական բարեացակամութիւնը ունեցած էր ինքնաբերաբար ինծի տրամադրելու իր ականատեսի յիշողութիւնները, որոնցմէ Տիար Բարսեղ Օհանեան եւ ես օգտուեցանք շնորհապարտութեամբ:*



*4.— Տիար Յակոբ Գասապեանի (Ամերիկա) մէկ կիսահաս աշխատութիւնը՝* «Էվէրէկի եւ Ֆէնէսէի Հայոց ծագումը եւ բարբառը» *անուն, որուն միայն տեղագրական բաժինէն կրցայ օգտուիլ, վասնզի բարբառին մասը գրի չէր առնուած:*

*5.— Տիար Դանիէլ Պօյաճեանի (Պէյրութ)* «Կերմիրի կրթական վերածնութիւնը» *պատկերացնող երկու տասնեակ էջերէ բաղկացեալ շահեկան մէկ ձեռագիր տետրակը, որմէ լիովին օգտուած եմ:*

*6.— Տիար Գաբրիէլ Թագւորեանի (Աղեքսանդրիա) Հայրենակցականի խնդրանքով գրի առած երկու փոքր տետրակները (էջ 14+29)* «Վէնէսէն եւ իր կրթական շարժումը (1887—1914)» *խորագրուած, որմէ լիովին կարելի չեղաւ օգտուիլ շատ ուշ ղրկուած ըլլալուն համար եւ իր յիշողութիւնները Կիւլշեան վարժարանէն, որմէ լիովին օգտուած եմ:*

*7.— Հանգ. Տիգրան Ֆրէնկեանի հազիւ միայն ինն էջերէ բաղկացեալ ձեռագիր մէկ փոքր պատմական-տեղագրական տեսութիւնը որ ընդարձակ ուսումնասիրութենէ մը փրկուած խլեակ մըն էր սակայն եւ որ իր աղջիկը Օր. Շարլօթ ազնուօրէն տրամադրած էր:*

*8.— Հանգ. Թէոդիկի* «Գողգոթայ բրխահայ հոգեւորականութեան եւ իր հօտին աղէտալի 1915 տարիին» *անուն ընդարձակ անտիպ գործը, որուն ձեռագիրը, պատրաստուած Մանչէսթըրի Հայ գաղութին նիւթական օժանդակութեամբ, կը մնայ պահուած Երուսաղէմ:*

*9.— Տիար Պետրոս Մարթաեանի (Գահիրէ), գրաւոր յիշողութիւնները, Կեսարացի նկարիչներու եւ աշուղներու, կեսարական կարեւոր անցքերու, եւ մի քանի վայրերու, մասնաւորապէս Աղ-Սարայի մասին, ամփոփուած չորս մանր տետրակներու մէջ:*

*10.— Տիար Արիս Գալֆաեանի (Աթէնք) յուշատետրէն փրցուած հազիւ 10 փոքրիկ էջերէ բաղկացեալ նօթերը, կախաղաններու եւ տեղահանութեանց մասին:*

*11.— Տիար Գրիգոր Նշանեանի (Գոսթանձա), երեք ընդարձակ նամակները, իր ծննդավայրին՝ Տէրէվանքի մասին, խիստ շահեկան յիշատակներով լեցուն:*

*12.— Տիար Պարչէմեանի (Ամերիկա) մօտաւորապէս 20 էջէ բաղկացեալ յիշողութիւնները, մասնաւորապէս Կեսարիոյ շրջակայից մէջ տեսնուած աղանդաւորական շարժման մասին:*

*13.— Տիար Յակոբ Եըլանճեանի (South Milwaukee, Ամերիկա) իր ծննդավայրին՝ Թոմարզայի մասին տուած տեղեկութիւնները, յիշողութիւնները եւ լեզուական ծանօթութիւնները:*

*14.— Տիար Լեւոն Թիւթիւնճեանի (Լօզան) իր հաւաքածոյէն տրամադրուած կեսարական մանրավէպերը:*

Հոս պարտք կը համարեմ հրապարակաւ յայտնել շնորհակալութիւններս անոնց որոնք ամենահօժարաբար տրամադրեցին այս ձեռագիրները, որոնք օգտագործած եմ, չթերանալով յիշատակել անոնց հեղինակներուն անունները առանց անգամ որ անոնցմէ քաղուած մը ըրած եմ, ինչպէս տպագրեալ գիրքերու համար ըրած եմ, զանց առնելով յաճախ կրկնութիւնը ամբողջական խորագիրներուն, որ ընթերցողը կրնայ գտնել յատուկ անուններու բառարանին օգնութեամբ, երբ փափաքի:

* * *

Այս հատորներու պատրաստութեան ատաղձ ծառայելու սահմանուած այս բոլոր աղբիւրներուն վրայ խօսելէ յետոյ, հոս պարտաւորուած եմ ցաւով յայտնելու թէ գործս երկու կարեւոր թերութիւններ ունի, որոնք դարմանել իմ կամքէս եւ կարողութենէս բոլորովին դուրս էին:

Ա.— Պէտք էր որ անոր հեղինակը անձամբ տեսած ըլլար այն վայրերը որոնց վրայ խօսելու կոչուած էր, մինչ անիկա դժբախտաբար առիթ չէր ունեցած տեսնելու իր սեփական աչքերով ո՛չ Կեսարիան եւ ո՛չ անոր շրջակայքը, եւ այդ տեղերու նկարագրութիւններուն համար պարտաւորուած էր օգտուիլ ուրիշներու աչքերէն:

Ցաւով եւ կսկիծով կը յայտարարեմ թէ միշտ մնացող վէրք մը եղաւ սրտիս մէջ այս հատորին պատրաստութեան բոլոր ընթացքին իմ անփութութիւնս, — որ թերեւս հազար անգամ դատապարտեցի — որով երբ առիթը եւ պատեհութիւնը ունէի, չէի գացած Կեսարիա, անգամ մը տեսնելու համար իմ նախնիքներուս ծննդավայրը, ուր այսօր անհընար էր երթալ եւ երբ նոյնիսկ հնար ըլլար երթալ հոն պիտի չգտնէի այն Կեսարիան որ ես կ'ուզէի տեսնել, անիկա զրկուած ըլլալով իր պատուական Հայ բնակչութեան ստուար մեծամասնութենէն:

Երբ անձնապէս տեսած ըլլայի այն վայրերը որոնց վրայ կը խօսէի, թերեւս աւելի տարբեր ու աւելի առարկայօրէն ներկայացնել կարելի պիտի ըլլար միջավայրը, դիտուած իմ իսկ սեփական աչքերովս, իմ հայեացքովս ու դիտողութիւններովս, մինչ հիմա տարբեր անկիւններէ եւ տարբեր հայեցողութիւններով դիտողներու երբեմն իրար հակասող տեսութիւններն են որ ինծի առաջնորդ ունեցած եմ:

Ասիկա կարեւոր թերի մըն էր որ չէր կարելի դարմանել:

Բ.— Պէտք էր որ այս գործը հարուստ ըլլար տեղական արձանագրութիւններով եւ յիշատակարաններով, որոնք գլխաւոր եւ էական ատաղձները պէտք էր ըլլային այս գործին, որ երբ ոչ բոլորովին զէթ մեծ մասամբ զրկուած է անոնցմէ, վասնզի տեղւոյն վրայ գտնուած բոլոր արձանագրութիւնները. քարերէն եւ թղթերէն, ինչպէս եկեղեցիներու, վանքերու եւ դպրոցներու արձանագրութիւնները, խաչքարերը, գերեզմանաքարերը ամէնն ալ փճացուցած էր թրքական վանդալութիւնը, այնպէս որ իմ եւ Հայրենակցականին բոլոր ջանքերը անօգուտ եղան անոնցմէ զոնէ մէկ մասին օրինակները ունենալու համար: Միակ յիշատակարանը որ կարելի եղաւ ստանալ Կեսարիայէն, Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ արձանագրութիւնն էր:



Երբ տեղ տեղ կրցած եմ տապանաքարի մը օրինակը կամ արձանագրութեան մը պատճէնը տալ, ատիկա կը պարտիմ նախապէս եղած հրատարակութիւններու:

Նոյնպէս ցաւով կը յիշատակեմ հոս թէ Ս. Կարապետի մայր-վանուց մէջ Հոգելոյս Տրդատ եպս. Պալեանի ջանքերով հաւաքուած 60 ձեռագիրներուն մէջ ապահովաբար կային բազմաթիւ ուրիշ Կեսարիա գրուած ձեռագիրներ որոնց յիշատակարանները կրնային նոր լուսաբանութիւններ բերել Հայ-Կեսարիոյ պատմութեան համար:

Դժբաղդաբար անոնցմէ միայն 44ին ցուցակագրութիւնը ղրկած էր ինծի Վիեննա, որով ինչպէս Կեսարիոյ մէջ բուն իսկ ձեռագիրները, Մանիայի մէջ ալ անոնց ցուցակագրութիւնը փճացած էր եւ այսպէս անոնք անդարձ կորսուած էին Հայ բանասիրութեան համար:

Հետեւաբար հարկ է խոստովանիլ թէ այս գործը, պարագաներու անողոք հարկադրանքին տակ միայն կրցած է օգտագործել այն վաւերագիրներն ու արձանագրութիւնները, որոնք դիպուածով փրկուած են այն աղէտէն, որ թուրքերը ի գործ դրին ո՛չ միայն Հայ ցեղին վրայ, այլ նաեւ հայակերտ անշունչ քարերէն յիշատակարաններուն, անոր համար որ անոնք կը յիշեցնէին թէ հոն, այդ վայրերուն մէջ երբեմն հին հայութիւն մը ապրած էր:

Այս տեսակէտով դժնդակ եղած է իմ գործս, վասն զի հարկադրուած եմ խօսիլ Կեսարիոյ վրայ, անկէ դուրս ատս անդ ցրուած հովերուն գրուած կտոր փրթուն թուղթեր եւ վաւերագիրներ փնտռելով, որպէս զի Կեսարիոյ հայութեան մասին, ընդհանուր աղէտէն փրկուած ցանուցրիւ տեղեկութիւնները իրարու քով բերել եւ այսպէս կողմնակի ճանապարհներով կազմել ամբողջութիւն մը:

Այս նպատակով ո՛չ միայն 1932ին արձակուրդով շրջեցայ Երուսաղէմ, Լիբանան եւ Սուրիա այլ կատարեցի բազմաթիւ դիմումներ եւ երկար թղթակցութիւններ, որոնելու համար նոր ատաղձներ իմ գործիս համար:

Ուրախ եմ որ ամէն ատեն ապարդիւն չեղան իմ դիմումներս եւ կրցայ ունենալ երբեմն շատ թանկագին ծանօթութիւններ, որոնք կը պարտիմ բարեացակամութեանը այն անձերուն որոնք բարի եղան չզլանալու իրենցմէ խնդրուած աջակցութիւնը եւ զիս երախտապարտ թողուցին:

Այս տեսակէտով պարտականութիւն կը համարեմ երախտապարտութեամբ յիշատակելու Ամեն. Տ. Թորգոմ Ս. Արքեպս. Երուսաղէմի Պատրիարքը, որ ո՛չ միայն 1932 Օգոստոսին, երբ Երուսաղէմ գայի, 15 օր, ամէն դիւրութիւն տուաւ նիւթեր հաւաքելու Երուսաղէմի թանգարանին մէջ, — ուր գտայ բազմաթիւ Կեսարիա գրուած ձեռագիրներ— այլ նաեւ բարեհաճեցաւ իր բազմազբաղ վիճակին հակառակ, իմ բազմաթիւ խնդրանքներուս գոհացում տալ, նոյնիսկ անձամբ կարգ մը յիշատակարաններու պատճէնները ընդօրինակելով եւ ղրկելով, ինչ որ երբեք չեմ կրնար մոռնալ:

Պիտի յիշեմ նաեւ միշտ շնորհակալութեամբ Կ. Պոլսոյ Պատրիարք Ամեն. Տ. Մեսրոպ Ս. Արքեպս. Նարոյեանը, որ Կ. Պոլսոյ Ազգ. Մատենադարանին մէջ պահուած ի Կեսարիա գրուած ձեռագրաց յիշատակարաններուն գոնէ մասամբ արտագրման արտօնութիւնը շնորհեց, ինչպէս նաեւ Էջմիածնայ Միաբան բազմահմուտ Գարեգին Արքեպս. Յովսէփեանը եւ Հալէպի բարեջան առաջնորդ Գեր. Տ. Արտաւազդ Արք. Սիւրմէեանը, որ Կեսարական ձեռագիրներու մասին տեղեկութիւններ ընձեռնեցին:

Երախտապարտութեամբ յիշել պարտք կը համարեմ յօժարակամ եւ փութեռանդ պատրաստակամութիւնը Վիեննայի Մխիթարեան յարգելի միաբանութեան անդամներէն բազմահմուտ Վեր. Հ. Ներսէս վրդ. Ակինեանի, որ անձնախանձաբար իմ տրամադրութեանս տակ դրաւ անտիպ պատճէնները Կեսարիա գրուած ձեռագիրներու յիշատակարաններուն որոնք իրեն Էջմիածնայ մէջ եւ այլուր ձեռք բերուած էր, եւ Վենետիկի Մխիթարեան միաբանութեան անդամներէն եռանդուն Վեր. Հ. Մկրտիչ Պոտուրեանի բարեացակամութիւնը, իր անտիպ մէկ աշխատասիրութենէն ինծի տրամադրելուն համար տեղեկութիւններ:

Չեմ կրնար մոռնալ այն ձեռնտուութիւնը որ ինծի ընծայեցին Տիար Բարսեղ Օհանեան (Աղեքսանդրիա), Հայկ Պէրպէրեան (Բարիզ), Արամ Անտոնեան (Բարիզ) եւ Լեւոն Թիւթիւնճեան (Լօզան), տրամադրելով ինծի դրամներու լուսանկարներ, մատենագրական տեղեկութիւններ, վաւերագիրներու պատճէններ եւ նոյնիսկ գիրքեր:

Այս ազնուական եւ վեհանձն պատրաստակամութեան հետ, մեծ ցաւ է ինծի դիտել տալ թէ գտնուեցան անձեր ալ որոնք զլացան իրենց օժանդակութիւնը, յայտնի անբարեացակամութեամբ մը, եւ նոյնիսկ եղան մարդիկ որոնք իրենց մտաւորականի հանգամանքին հետ անհաշտ մտայնութեամբ մը նոյնիսկ դրամաշորթութեան ալ դիմեցին:

Ճշմարտապէս մեծ ցաւով կ'ըսեմ թէ Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան նախորդ Աբբահօր Գեր. Հ. Յովհաննէս վրդ. Աւգերի գրած մի քանի նամակներս, որոնցմով տեղեկութիւններ կը խնդրէի



նոյնիսկ պատասխանի չարժանացան: Նոյնիսկ Հ. Մկրտիչ վրդ. Պոտուրեանի՝ իր վանքին յանձնած աշխատասիրութենէն իր ինքնակամ տրամադրածն օգտագործել մեզի հնար չեղաւ:

Եւրոպայի մէջ հաստատուած կրօնական միաբանութեան մը — որ իբր թէ Հայ դպրութեան ծառայելու կոչումն ունի, — այս ընթացքը խոր ցաւով կ'արձանագրեմ:

Նոյնքան մեծ է իմ ցաւս հանդէպ ընթացքին՝ Պ. Հայկ Աճէմեանի (Դավրէժ) որ 1933 Մարտ 18ին ինքնաբերաբար դիմելով Հայրենակցականին վարչութեան, պատրաստակամութիւն յայտնած էր տրամադրելու Խաչատուր վրդ. Կեսարացիի կենսագրութիւնը, պատկերը(!!) եւ տպանաքարի լուսանկարը եւայլն, պահանջելով 12 տոլարի վարձատրութիւն մը, իբր պատուագին իր աշխատութեան եւ իր տքնութեանց: Հակառակ անոր որ Հայրենակցականը բարի նախանձով անմիջապէս 3 անգլ. ոսկի ղրկեց, սակայն ցաւալի է որ այդ պարոնը հակառակ իր խոստումը յիշեցնող բազմաթիւ նամակներու, չյօժարեցաւ իր յանձնառութիւնը կատարել, կամ զայն կատարած համարեց մի քանի լուսանկարներ միայն ղրկելով:

Հոս նոյնքան ցաւով պարտաւորուած եմ յիշելու թէ աշխատութեան մը մէջ որ յիշատակարանը ըլլալու սահմանուած էր կեանքին Հայ գաղութի մը, որ իր մէջ կը պարունակէր անխտրաբար ամէն դաւանանք եւ ամէն կուսակցութենէ անհատներ, գտնուեցան մարդիկ որ հոս ալ ուզեցին կուսակցական կիրք ու հաշիւ դնել, եւ իրենց տեսակէտները քալեցնել եւ երբ չյաջողեցան, ցոյց տուին անբարեացակամութիւն եւ ձեռնպահութիւն:

Հետեւաբար թող անմեղադիր ըլլան ընթերցողները եթէ երբեմն նշմարեն անհաւասարակշռութիւններ եւ անհամեմատականութիւններ, եւ կամ ուրիշ կերպով խօսելով, եթէ որոշ կուսակցութեան մը գործերուն աւելի լայն տեղ տրուած տեսնեն:

Նոյնպէս կը խնդրեմ որ երբեք մեղադրանքի առարկայ չընեն զիս երբ կենսագրեալ կամ լուսանկարեալ անձերու շարքին, աւելի կարեւորները զանց առնուած եւ նուազ արժանաւորները յիշատակուած տեսնեն, վասն զի նախ՝ անկարելի էր բոլոր արժանիքի տէր Կեսարացի Հայերը ներկայացնել լրիւ, եւ երկրորդ՝ ինծի համար անկարելի էր տեղեակ ըլլալ թէ աշխարհի չորս ծագերուն մէջ ո՞ւր ո՞ր Կեսարացիքը կան:

Ներկայացուած անձերը պէտք է նմոյշներ եւ օրինակներ համարուին, մասնաւորապէս ժամանակակիցները, որոնց մէկ մասին կեանքին պատահաբար ծանօթացած եմ, վասն զի իրենցմէ մէկ կարեւոր մասը բարեհաճած է, պատասխանելու, Ամերիկայի Վերաշինական Միութեան

Կեսարացի հայրենակիցներու ցրուած հարցարաններուն, որոնք ինծի տրամադրուեցան :

Հաւանօրէն շատ շատեր ալ չեն համած պատասխանել, ինչպէս անձնապէս իմ խնդրանքներուս ալ յամառ պատասխանեցան, իբր թէ համեստութեամբ եւ երբեմն ալ այլ հաշիւներով, որոնք չպարզել աւելի խոհեմութիւն է, թէ ինծի եւ թէ ընթերցողներուն համար :

Ես իմ սկզբնական ծրագիրիս մէջ որոշած էի այս գործին մէջ տեղ չտալ իրենց մահկանացու ընթացքը տակաւին չբոլորող Կեսարացիներու, շատ կարկառուն մի քանի անձերու բացառութեամբ, սակայն մանաւանդ Ամերիկայի Կեսարիոյ Վերաշինական Միութեան կողմէ յայտնուած փափաքին ընդ առաջ երթալով, Հին Կեսարիոյ աշխարհի չորս կողմերը ցրուած բեկորներէն անոնց որոնք տեղ մը կամ դիրք մը գրաւած են, տեղ մը սահմանել յարմար դատուեցաւ :

* * *

Երկու խօսք ալ լեզուին ու տպագրութեան վրայ :

Պատմական գործի մը մէջ ճշգրտութիւնը ըլլալով էականը, պարտաւորուած էի չափազանց ժուժկալ ըլլալ եւ որքան կարելի է սեղմ լեզու մը գործածել եւ զգուշանալ շեղումներէ եւ խորհրդածութիւններէ :

Մէջբերումներու մէջ պահած եմ հեղինակներու լեզուն անփոփոխ բացի այն պարագայէն երբ բնագիրները գրուած են Երեւանեան խժական ուղղագրութեամբ : Այն ատեն հարկ դատած եմ մեր սովորական ուղղագրութեան վերածել :

Գալով յատուկ անուններու ուղղագրութեան, շատերը անոնց ծագումով օտար, ուղղագրուած են զանազան ձեւերով, տառադարձութեան կամ արտասանութեան տարբերութիւններու բերմամբ : Պիտի յանձնարարէի ընթերցողներուն որ բարի ըլլան այս տարբերութիւններու մասին եթէ տարակոյսի մը ենթարկուին, դիմելու յատուկ անուանց բառարանին, — այս հատորներուն ամէնէն անշուք սակայն ամէնէն տաժանելի աշխատանքին առարկայ եղած մասին — որուն տաժանքը յանձն առի, ընթերցողներուն, գիրքին գործածութեան համար դիւրութիւն մը տալու առաւելութիւնն ալ ընծայելու համար :

Հոն պիտի գտնեն ընթերցողները անուններու համաձայնութիւնը :

Ընթերցողները պէտք չէ ոեւէ իրենց ծանօթ իրողութեան կամ անհատի մը կեանքին մասին, իրենց ունեցած մէկ ծանօթութեան, իրենց փնտռած մէկ էջին վրայ չգտնելէ յուսահատին, այլ բառարանին օգնութեամբ փնտռեն, վասնզի յաճախ կրկնութենէ խոյս տալու համար երբեմն այլուր յիշուած դէպք մը կամ իրողութիւն մը չէ կրկնուած :



Գալով տպագրութեան, Եգիպտոսի մէջ տրուած պայմաններուն տակ, աւելի խնամեալ Հայ տպագրութեան մը կարելիութիւնը գոյութիւն չունէր, մանաւանդ նկատի առնելով որ անիկա կը կատարուէր մենատառ : Հակառակ այն զգուշութիւններուն որ եղան, կը ցաւիմ որ մանաւանդ նմանաձեւ տառերու սխալներ պատահած են, ինչպէս նաեւ մի քանի կարեւոր վրիպակներ : Զանց առնելով ա-ի եւ տ-ի գ-ի դ-ի, զ-ի դ-ի եւ այլ վրիպակները, որոնք ուշիմ ընթերցողը ինքնին կրնայ սրբագրել, իմաստի այլայլութիւն առաջ բերող եւ այլ սխալներու համար վրիպակներու ցուցակ մը պատրաստած եմ, որ եթէ հնար է պիտի խնդրէի որ ընթերցողները խնամ ունենային նախ քան գիրքին ընթերցումը սրբագրել եւ ապա կարդալ :

Գիրքիս մէջ զետեղուած պատկերները թուով 687 հատ, ինչպէս կը տեսնուի, ամէն անգամ յաջող պատկերներ չեն, սակայն անոնք բացի մէկէն, որուն վաւերականութեան կասկածելու իրաւունք ունինք, բոլոր միւսները իրական պատկերներ են : Անոնցմէ շատերը արդէն տժգունած պատկերներ կամ ասդին անդին գտնուած հին հազուագիւտ լուսանկարներ էին, որոնց զնկատիպ կաղապարները երբեմն շատ յաջող չեն եղած : Պատկերներէն ոմանք ալ գիրքերէն վերարտադրութիւններ են : Դժբաղդութիւն մըն է որ հաւասար յաջողութեամբ եւ միօրինակ տիպով պատկերներով կարելի չեղաւ զարդարել այս գործը որ աւելի գեղարուեստական ճաշակով տպագրութեամբ մը, աւելի հրապուրիչ արտաքին մը պիտի ունենար :

Պատմութիւնը առարկայացնելու տեսակէտով կարեւոր ըլլալով նաեւ քարտէսներու գոյութիւնը, հարկ դատեցի նաեւ կցել գործին 17 գունաւոր քարտէսներ բացի երկու բնագիրին մէջ ներմուծուած քարտէսներէ ոչ-գունաւոր :

Այս քարտէսները որոնց սեւագիրները պատրաստած էի նախապէս, իրենց վերջնական ձեւաւորումը ստացան Տիար Մարտիրոս Պաշայեանի շնորհիւ, որ անոնց տպագրութեան հսկելու շնորհն ալ ըրաւ :

Եթէ ուշադրութեամբ նկատի առնեն ընթերցողները, պիտի տեսնեն թէ եթէ անոնցմէ ոմանք նախապէս զանազան պատմագէտ-աշխարհագիրներու կողմէ գծուած քարտէսներէն առնուած են, ոմանք ալ բոլորովին ի նորոյ, յատկապէս այս գործին համար պատրաստուած են եւ մեծապէս կրնան նպաստել ընթերցողին հետաքրքրութեան գոհացում տալու :

Ահա թէ ինչեր կ'ուզէի որ ընթերցողները գիտնային այս գիրքը կարդալէ առաջ :

* * *

Վերջին խօսք մը եւս:

Գրչագիրներու եւ հին տպագրութիւններու մէջ հեղինակները կամ գրիչները, կը գտնենք յիշատակարան մը ուր փառք տալէ յետոյ Արարիչին, որ կարողութիւն տուած էր իրենց տկարութեան յաւարտ հասցնել, կը խնդրէին իրենց ընթերցողներէն ո՛չ միայն զիրենք յիշել, այլ նաեւ իրենց ծնողքը, զաւակները, քոյրերը եւ եղբայրները, ինչպէս նաեւ իրենց գործակիցները, մագաղաթը պատրաստողը կամ թուղթը հայթայթողը, մելանը յօրողը կամ մանուշին մելան տուողը, զարդանկարողը կամ փորձերը սրբագրողը, եւ բոլոր մօտէն կամ հեռուէն գործին նպաստողները, նոյնիսկ զիրենք կերակրողները եւ հիւրընկալողները:

Երբ այդ սովորութիւնը պահպանուած ըլլար այս հատորներուն յիշատակարանին մէջ, զայն համագրող գրիչը իբր նախապատճառ պիտի յիշէր իր հայրը՝ Աստուածատուր Ալպօյաճեանը, որուն կը պարտէր իր նախնական եւ ի մանկութենէ ստացած ծանօթութիւնները Կեսարիոյ՝ անոր հայրենիքին վրայ եւ իր բոլոր հօրենական գիծով ազգականները որոնց միջոցաւ ծանօթացած էր քիչ շատ Կեսարիան, որ պատմութեան յանձնելու գործը իրեն վիճակեցաւ դժբախտ պարագաներու բերմամբ:

Այս յիշատակարանին մէջ նոյնպէս պարտաւոր պիտի ըլլայի յիշատակել իբր «պատճառ գրութեանս», Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան Գահիրէի վարչութեան չորս անդամները՝ Տիար Բիւզանդ Թէքէեանը, Յակոբ Մարտինեանը, Մանուէլ Պէյլէրեանը եւ Կարապետ Սըվազլեանը, որոնք «ետուն գրել զսա . . . յիշատակ անջնջելի, յաւէտ յամս ժամանակաց», ինչպէս նաեւ բոլոր անոնք որոնք իրենց հայթայթած բերանացի եւ գրաւոր տեղեկութիւններով նպաստեցին գործին կատարելութեան, եւ վերջապէս պիտի յիշէի անոնք որոնք իմ հնգամեայ տքնաջան աշխատութեանցս մէջ ոչ միայն խրախոյս ու նեցուկ եղան ինծի, աշխատանքս դիւրացնելով, այլ ստանձնեցին նաեւ աշխատանքին մէկ կարեւոր մասը, կատարելով անգլերէնէ եւ ֆրանսերէնէ թարգմանութիւններ, քարտէսներու գծագրութեան օգնեցին, փորձերու սրբագրութեան այնպէս աշխատանքին բերին իրենց օժանդակութիւնը եւ մանաւանդ յատուկ անուններու բառարանին պատրաստութեան տաժանելի ու տաղտկալի գործին մէջ իմ ամենամեծ օգնականներս եղան:

Անոնց մէջ առաջագոյնը եւ գլխաւորն է Տիկ. Արշակուհի Ալպօյաճեան (ծն. Մ. Գասապեան) երբեմն աշակերտուհի եւ ապա պաշտօնակից, եւ հուսկ ուրեմն հարս, որ բնիկ Կեսարացի ըլլալով, իր



ծննդավայրին սիրովը առլցուն, առաջին օրէն իսկ մեծ զօրավիգ մը եղաւ ինծի, ինչ ինչ հատուածներու թարգմանութեան, քարտէսներու պատրաստութեան, ազգագրական նիւթերու հաւաքման, յատուկ անունաց բառարանի պատրաստութեան եւ մանաւանդ փորձերու սրբագրութեան մէջ եւ այս կերպով իմ ծանր աշխատութիւնս թեթեւցնելու մեծապէս նպաստեց:

Իրմէն յետոյ կը յիշատակեմ նաեւ կինս՝ Աննիկ Ա. Ալպօյաճեանը, որ հակառակ զինքը անշարժութեան մատնող հիւանդագին վիճակին, անվհատ յարատեւութեամբ մը, յատուկ անուններու բառարանին կազմութեան մէջ կարեւոր աշխատանք ունեցաւ, որոնք հոս յիշել պարտք կը համարեմ, զէթ ի յիշատակ:

* * *

Հոս աւարտելով իմ խօսքս կը խնդրեմ ընթերցողներէն որ անմեղադիր ըլլան այն թերութիւններուն համար որոնք անխուսափելի են այսքան ընդարձակ գործի մը այսքան կարճ ժամանակի մը մէջ պատրաստութեան պատճառով:

Սիրով տրամադիր եմ լսելու բոլոր բարեմիտ քննադատութիւնները եւ տեղեկանալու լրացուցիչ ծանօթութիւններուն, որոնք թերեւս օգտագործելու առիթը ներկայանայ յաւելուածական հրատարակութեան մը մէջ, երբ գտնուին շատ շահեկան եւ մանաւանդ էական տեղեկութիւններ որոնք արժեն իբր յաւելուած հրատարակել:

2 Մայիս 1937

ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

32, CHARA TERA'A, 32
MATARIA
LE CAIRE

# Ա. ՄԱՍ

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

---

## ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԿԱՄ ԳԱՄԻՐՔ

## ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

## ԵՒ

## ԿԵՍԱՐԻՈՅ ԳԱՒԱՌԸ ՄԱՍՆԱՒՈՐԱՊԷՍ

## ԻԲՐ ԱՇԽԱՐՀԱՄԱՍ

---

*Կեսարացի հայը մեր տոհմային տարեգրութիւններու մէջ ունեցած է իր առանձնայատուկ տեղը։ Անիկա կը ներկայացնէր մասնաւոր յատկանշական տիպ մը որ կը զանազանուէր բոլոր ուրիշ հայաբնակ վայրերու բնակչութենէն իր սեփական նկարագիրին ցայտուն գիծերով։*

*Այն գլխաւոր յատկութիւնները որոնք կը բնորոշեն կեսարացի հայը, մասնաւորապէս են իր տոկուն կամքը, իր յարատեւ աշխատասիրութիւնը, նախաձեռնարկ ոգին, յանդգնութիւնը, վաճառականի եւ առեւտրականի ընդունակութիւնը, խնայասիրութիւնը, զրկանքներու եւ զոհողութեանց հանդուրժելու իր համբերութիւնը, չարքաշութիւնը, եւայլն։*

*Այս բոլոր յատկութիւնները առաւել կամ նուազ չափով մը հայկական ցեղային նկարագիրին մաս կազմելով հանդերձ, միշտ կեսարացի հայը յատուկ տիպար մը նկատուած է մեր մէջ։ Այս մասնաւորումը՝ անշուշտ ան կը պարտի ամէն բանէ առաջ իր միջավայրին ուր ապրած են իր նախնիքը, կրելով երկրին բնագրութեան, կլիմային եւ աշխարհագրական այլ պայմաններուն ազդեցութիւնը։*

*Այս երկիրը արդարեւ ունի առանձին դիրք մը եւ մասնաւոր նկարագիր մը որ հաւանաբար թողած է իր խոր ազդեցութիւնը իր մէջ ապրող բնակչութեան վրայ։ Ան կրած է անշուշտ նաեւ ուրիշ ներգործութիւններ որոնք սակայն անփոփոխ եւ միօրինակ չեն եղած, ինչպէս տիրապետող ազգերու ազդեցութիւնը որ յաճախ փոփոխութիւններու ենթարկուած է, վասնզի Կեսարիոյ շրջանակին տիրապետած են հետզհետէ զանազան ազգեր եւ պետութիւններ,*

որոնք անշուշտ իրենց նկարագիրին դրոշմը թողած են այս նուաճուած երկրին բնակչութեան վրայ, նայելով իրենց տիրապետութեան տեւողութեան, պետական կազմին ամրութեան և կառավարելու եղանակին, որ բնաւ միօրինակ չէ եղած, վասնզի տիրապետողներէն ոմանք երկար եւ ոմանք միայն կարճ շրջան մը իշխած են, ոմանք կարգաւորեալ պետութիւններ եղած են եւ միւսները արշաւող բարբարոսներ, և վերջապէս ոմանք որոշ առաջադրութիւն և պետական մասնաւոր ուղղութիւն ունեցած են և այլք սոսկ աւեր և աւար սփռած են։

Հետեւաբար իրենց ազդեցութիւնը եղած է փոփոխական և յաճախ իրարու ներհակ և եղծանելի։

Սակայն երկրին աշխարհագրական նկարագիրը, մէկ և միօրինակ եղած է և հետեւաբար իր ազդեցութիւնը անփոփոխելի ու տեւական, աւելի հիմնական ու հաստատուն։

Արդ, այդ յարատև ու մշտնջենական ազդեցութեան աղբիւրը՝ երկրին աշխարհագրական նկարագիրը, նախ պէտք է ներկայացնել, իբր հոն ապրող բնակչութեան վրայ ներգործող ազդակներուն ամենէն հզօրը, մշտնջենականը և անփոփոխը։

Երբ աչքի առջև ունենանք Ասիական Թուրքիոյ քարտէսը, պիտի տեսնենք որ Ալիս գետը (Գըզըլ Ըրմաք) Անատոլուի հիւսիս-արեւելեան կողմէ սկիզբ կ'առնէ և հարաւ-արեւմտեան ուղղութիւն մը բռնելով կը քերէ կ'անցնի Սեբաստիան ու Կեսարիան, և յանկարծ իր ճամբան կը փոխէ դէպի հիւսիս, և քարտէսին վրայ մօտաւորապէս շրջանակ մը գծելով կը թափի Սեւ Ծով։

Միւս կողմէ դիտողը պիտի նկատէ նաև թէ Տաւրոս լեռներն ալ Կիլիկիոյ արեւմտեան ծայրէն ու Միջերկրականի եզերքէն ծագում կ'առնեն և հիւսիս-արեւելեան ուղղութիւն մը բռնելով, կը շրջագծեն Կիլիկիոյ արեւմտեան և հիւսիսային սահմանները ու կը շարունակեն իրենց տողանցքը՝ միանալու համար Անդր-Տաւրոսեան բարձունքներուն։

Արդ, Ալիս գետին դէպի արեւմուտք ոլորուած գծին և այս լեռնաշղթային դէպի հիւսիս անջատուած սարաշարքին մէջտեղ սեղմուած հողամաս մը կայ, որուն արեւմտեան անկիւնը վիթխարի անկիւնաքարի մը ձևով դիրք բռնած է հաստարեստ բարձունք մը, Արգեղոս կամ Արգէոս — արդի հնչումով Էրճիաս— լեռը, որ կը բարձրանայ Ալիս գետին և Ջամանթի Սուի միջև։

Արգէոս այս գաւառին համար ունի խորհրդանշանական հանգամանք մը, կանգնելով անոր կեդրոնավայրին մէջ և հսկելով կարծես իբր պահակ այն տարածութեան վրայ, որ հարաւէն ու արեւելքէն պատնէշուած է Տաւրոսի լեռնաշղթայով և դէպի հիւսիս կը տարածուի մինչև Ալիս, որ իր սահմանը կը կազմէ և դէպի Արեւմուտք մինչև Ինճէ Սուի սարահարթը կը հասնի։

Այս տարածութիւնը որ կը ներկայացնէ Կապադովկիան, գուցէ անձուկ մտքով և մասնական կերպով, ընդարձակ հրաբխային դաշտ մըն է իր հիւսիսային սահմաններէն՝ այսինքն Ալիսի եզերքներէն սկսեալ։

Այն հողամասը՝ զոր ներկայացնել պիտի ջանամ կարելի եղածին չափ ամփոփուելով անոր անձուկ սահմաններուն մէջ, այսօրուան



Կեսարիոյ կուսակալութիւնն է իրեն լծորդուած ունենալով մի քանի փոքր մասերը դրացի կուսակալութիւններու։

Շրջանակը որ այսօրուան Կեսարիոյ կուսակալութիւնը կը ներկայացնէ չէ իսկապէս աշխարհագրական միութիւն մը։ Ան նաև չէ եղած բնաւ քաղաքական միաւոր մը, վասնզի Կեսարիա քաղաքը իր շրջականերով երբեք ոևէ շրջանի մէջ չէ եղած առանձին պետութիւն մը։ Անիկա շարունակ մաս կազմած է զանազան պետութիւններու առաւել կամ նուազ ընդարձակ, և ինքնին չի ներկայացներ բնաւ աշխարհամաս մը՝ որ անջատուած ըլլայ իր դրացի երկիրներէն։

Ասոր համար է որ ոչ պատմական և ոչ ալ վարչական առանձին անուն մը ունեցած է, այլ Կեսարիա գլխաւոր քաղաքին անունով կազմուած է այսօր կուսակալութիւնը, որ անցեալի մէջ ալ չէ ունեցած ուրիշ անուն մը։

Հին ժամանակներու մէջ անիկա մասը կը կազմէր պատմական աշխարհամասի մը որ Կապադովկիա կը կոչուէր և երբեմն կը կազմէր առանձին անկախ իշխանութիւն մը, որուն անունով յետոյ այս երկրին տիրապետողները կոչեցին նոյն նահանգը երկար ատեն։

Դժբախտութիւն մըն է որ ոչ միայն այսօրուան Կեսարիոյ կուսակալութիւնը այլ նաև Կապադովկիան պէտք եղածին պէս ուսումնասիրուած չեն գիտուններու կողմէ։

Այնպէս որ արդարև Կապադովկիոյ տեղագրութիւնը Փոքր Ասիոյ աշխարհագրութեան ամենէն դժուարին խնդիրներէն մէկն է, ինչպէս ըսած է գերման գիտուն մը՝ Ջիմմերէր։

Շատ քիչեր գրաղած են այս շրջանով։

Այդ քիչերն ալ առհասարակ ընդհանուր կերպով Փոքր Ասիան ունեցած են իրենց շահագրգռութեան առարկայ և այդ առթիւ որոշ չափով մը ուսումնասիրած են Կապադովկիան իբր մասը այս աշխարհամասին։

Անձնապէս հոն այցելած են և ուղեգրութիւններ գրած են Թէքսիէ, Համիլտըն, Էնսուորթ, Ռիդոս, Բարթ(1), Մորդտման(2), Է. Շանդր(3) և այլն, որոնք կը հաստատեն առասպելազանց պատմուածքները ֆրանսացի Բօլ Լուկաս (Paul Lucas) ուղեւորին, որ Լուի ԺԴ.ի հրամանով այդ շրջանները ուղեւորած էր։

Կապադովկիոյ վրայ մենագրութիւն մը ունի Ջիմմերէր (Zimmerer) գերմանը որուն «Kappadokien» անուն գործը հայերէնի թարգմանուած է Հ. Յ. Տաշեանի կողմէ (տես Հանդէս Ամսօրեայ 1900) Գամիրք խորագրով։

Թուրքերէն Խալիլ Էտհէմ, ունի «Գայսէրի շէհրի» (= Կեսարիոյ քաղաքը) խորագրով ուսումնասիրութիւն մը տպուած Կ. Պոլիս, հիճրէթի 1334 թուին Օսմանեան Պատմագրութեան ժողովին կողմէ։ Հե-

---

(1) Ափրիկագնաց Հ. Բարթ 1858ին այցելած է Կապադովկիա ընկերակից ունենալով Մորդտմանը և ունի տեղեկագիր մը «Ուղեւորութիւն Տրապիզոնէն մինչեւ Սկիւտարի» խորագրով. (H. Barth. Reise von Trabezunt nach Skutari. Gotha 1860)։

(2) Մորդտման ալ ունի ուսումնասիրութիւն մը (A. D. Mordtmann. Die Troglodyten in Kleinasien. München. 1861)։

(3) E. Chantre. Mission en Cappadoce.

գինակը գրաւած է մասնաւորապէս Սելճուկեան շրջանի յիշատակա-
րաններով։

Իսկ անցեալ տարի (1934ին) Գարա Մէհմէտ Աղա Ջատէ Քէմալէտ-
տին հրատարակեց հատոր մը կեսարիոյ պատմութեան նուիրուած
(տպ. կեսարիա), Էրճիյաս Գայսէրիսի վէ թարիհինէ պիր պագըշ անունով։
Թրքական հրատարակութեանց կարգին կրնանք դասել նաև հնա-

Թրքական հրատարակութիւնը Monuments Turcs
գէտ Albert Gabrielի, յանձնարարեալ գրութիւնը Monuments Turcs
d'Anadolieի շարքին մէջ իբր Ա. հատոր հրատարակուած կեսարիոյ և
Նիկտէի վերաբերեալ մասը, որ մասնաւորապէս կեսարիոյ հնագրու-
թեամբ գրաւած էր, տեղւոյն վրայ կատարուած հետազօտութիւն-
ներով։

Հայերէն ոչ ոք մասնաւոր ուսումնասիրութեան առարկայ ըրած է
կեսարիան և իր շրջակայքը։

Հետևաբար երկրին բնական նկարագրին վրայ մեր տեղեկու-
թիւնները չունին այն ընդարձակութիւնը և մանրամասնութիւնը ո-
րոնք անհրաժեշտ էին զայն ներկայացնելու համար իբր աշխարհա-
գրական միութիւն մը, լիակատար կերպով, սակայն պիտի ջանամ
տալ գոնէ հարևանցի մի քանի տեղեկութիւններ, որոնց նպատակը
պիտի ըլլայ ծանօթացնել այս աշխարհամասին հողային կազմը, լեռ-
նագրութիւնը, ջրագրութիւնը, բուսականութիւնը, կենդանաբանու-
թիւնը և հանքային հարստութիւնները, կլիման, հաղորդակցութեան
միջոցները, բնակչութեան նկարագիրը և վերջապէս վարչական բա-
ժանումները։

# Ա.

## ՍԱՀՄԱՆՆԵՐ ԵՒ ՏԱՐԱԾՈՒԹԻՒՆ

Հերոդոտոսի տուած տեղեկութիւններուն համաձայն կապադով-
կիա անունով երկիրը ընդարձակագոյն տարածութիւն մը ունէր և կը
կազմէր Փոքր Ասիոյ ներքին ընդարձակ նահանգներէն մին, վասնզի
անիկա կապադովկիա անունով կը ճանչնար Տաւրոս լեռներէն մինչև
Սև ծով տարածուող ամբողջ շրջանը։

Նոյնպէս Ստրաբոն խօսէն (Միջերկրական) մինչև Պոնտոս (Սև
ծով) տարածուած երկիրները կը համարէր կապադովկիոյ մաս։

Հերոդոտոսի սահմանագծումը ընդունելով հիմ և Տաւրոսէն հա-
րաւ տարածուած երկիրները դուրս թողլով, կապադովկիան իր ամ-
բողջութեամբ բարձր լեռնադաշտ մըն է մօտաւորապէս 3000 ոտք
բարձրութեամբ և կը կազմէ Փոքր Ասիոյ մեծ լեռնադաշտին ամենէն
բարձր մասը. (տես. Բրիտանական Համայնագիտարան)։

Կուրտիոս (Պատմ. Ցուցակ Ա. 5) Միջին Փոքր Ասիոյ այս լեռնա-
դաշտը կոչած է Փոքր Իրան։

Կապադովկիոյ սահմաններն էին հարաւէն Տաւրոս լեռը, արևել-
քէն Եփրատը, Հիւսիսէն՝ Պոնտոսը և արևմուտքէն մօտաւորապէս
կեդրոնական մեծ աղի «անապատը», բայց անկարելի է վճռաբար
պնդել այս գիծերուն վրայ որոնք սովորաբար ընդունուած են ուրիշ-
ներու կողմէն ալ։ Միայն ոմանք արևմտեան կողմէ իբր դրացի եր-
կիր կը յիշեն Լիկաւոնիան և արևելքէն՝ Հայաստանը, որ արդարև



Եփրատը ունէր իբր բնական սահման M·M. Ed. d'Ault-dumesnil. Louis
Dubeaux et l'Abbé A. Crampon, «Nouveau Dict· d'Hist. et de Géo. anc.
et mod. 1874»։

Կապադովկիա մօտաւորապէս 250 մղոն երկայնութիւն և 150 մղո-
նէն պակաս լայնութիւն ունէր, ըստ հին աշխարհագիրներու։

Կապադովկիա բարձրանիստ, գրեթէ հարթ տարածութիւն մըն է,
որուն միայն հարաւ-արևելեան կողմը Արգէոս միանաւոր կոնայեռը
դուրս կը ցցուի։ (տես. Թէոտոր Րէյնախ, Միհրդատ Եւպատորի վրայ ու-
սումնասիրութիւն):

Ջիմմերէր (Հ Ա. 1930 էջ 21) գերման ուսումնասէրը կ'ըսէ թէ
Թէոտոր Ռայնախի այս տողերը էապէս սահմանափակել պէտք է։

Այս աշխատութեան մէջ մեր չահագրգռութեան առարկայ եղած
մասը Կապադովկիան չէ իր լայնագոյն առումովը այլ անոր մէկ մասը
որ նոյնպէս Կապադովկիա կը կոչուէր, և տարածուած էր Փոքր Ասիոյ
ամէնէն բարձր կատարին՝ հնագոյն ժամանակներէ սկսեալ Արգէոս
կոչուած լերան ստորոտը՝ անոր շուրջը տարածուած երկիրները, ո-
րոնք մինչև Ալիս կը հասնին դէպի հիւսիս, և մինչև Տաւրոս լեռնե-
րու կիրճերը կը տարածուին դէպի հարաւ, առանց մեծ տարածու-
թիւն մը ունենալու դէպի արևմուտք և դէպի արևելք։

# Բ.

## ԵՐԿՐԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Այս աշխարհամասին երկրաբանական կազմին վրայ մեր ծանօ-
թութիւնները շատ սահմանափակ են։

Հակառակ անոր որ երկրաբաններ կը հաստատեն թէ մարդուն
պատմութիւնը երկրագունդիս վրայ առնուազն 500,000 տարիներու
անցեալ ունի իր ետին, մեր ծանօթութիւնները անոր պատմութեան
մասին շատ դոյզն բան մըն են քանի որ վեց հազար տարիէն աւելի
հին ժամանակամիջոցներու մասին ոչինչ գիտենք։

Միայն գիտենք երկրաբանական տուեալներու վրայ թէ մարդը
գոյութիւն ունէր և կ'ապրէր։

Փոքր Ասիոյ պատմութեան տեսակէտով թերևս ունի իր շահեկա-
նութիւնը գիտնալ թէ երբ դեռ մարդը երևան չէր եկած հողագուն-
դին վրայ ծովը ծածկած էր ամբողջ Մերձաւոր Ասիան և Ափրիկէի
հիւսիսային կողմերը։ Եւրոպայի, Ափրիկէի և Ասիոյ մեծ ցամաքնե-
րուն մէջ ինկած այս հին և մեծ Միջերկրական ծովի տարածութեան
վրայ, հոս հոն, ցրուած էին մի քանի կղզիներ — Կովկասը, Հայաստա-
նը, Մակեդոնիան, թերևս նաև Անատոլուն։ Երկրաբանական հետա-
զօտութիւններ կը հաստատեն թէ ժամանակի ընթացքին այս ընդար-
ձակ ծովէն բարձրացած են Եգիպտոսը, Արաբիան, Պարսկաստանի և
Փոքր Ասիոյ մեծ մասը։ Ծովին մէկ ճիւղը, խոր նեղուցի ձևով,
կ'անցնէր Մերձաւոր Ասիոյ մէջէն մինչև Իրանի արևելեան սահման-
ները, իսկ ուրիշ ծով մը տարածուած էր Տաւրոսի, Կովկասի, Էլ-
պրուզի և Հինտու Քուշի միւս կողմը։ Իրանեան լեռնադաշտը դեռ
չէր բարձրացած, մեծամեծ բարձրաւանդակներ կը ծածկէին Փոքր
Ասիան, Կովկասը, Անդրկասպեան երկրի հարաւային մասը, և Արա-

բիան, միացնելով իրարու հետ հարաւային Պարսկաստանը և բովան-
դակ Եգիպտոսը։ Նոյն ժամանակամիջոցին երբեւան կուգան ադի մե-
ծամեծ լիճեր Տաւրոսի, Կովկասի և Իրանի հիւսիսային կողմերու խո-
րութեանց մէջ։ Երկրագունդիս կեղեւը շարժումներ կ'ունենայ, ո-
րոնցմէ մէկ քանին հաղորդակցութեան կը դնեն ծովը և այդ լիճե-
րը, միւսները կը բարձրացնեն ամբողջ Մերձաւոր Ասիոյ մակերեւոյթը։
Այդ միջոցներուն երկրին մեծ մասը ծածկուած էր ադի ջուրերու
մեծ տարածութիւններով, որոնք լճացած էին և ելքի ճանապարհ
չունէին։ Ասոնք գոյացուցին կրախառն կաւային հողի և գաճի հաստ
չերտեր։ Երկրի արտաքին մակերեւոյթը դեռ արդի ձեւը չունէր։
Կարմիր ծովը և Պարսից ծոցը դեռ ցամաքի մասերը կը կազմէին։
Իրանի հարաւային լեռնաշղթաները, միացած Արաբիոյ շղթաներուն
հետ, կը կազմէին եզերքը Սուրիա-Իրանական մեծ լիճին։
Հետզհետէ բարձրութիւնները կը փոփոխուէին, կը չատնէին Իրանի
և Փոքր Ասիոյ լեռնաստաններուն մէջ։ Նեղոսի ցած տափարակը կը
գոգաւորուի կազմելով խոր նեղուց մը, ուր կը խուժեն ադի ջու-
րերը։ Արեւելքէն ջուրերը, ոլանալով դէպի այդ պատռուածքը, քա-
րերով կը ծածկեն Արաբիոյ անապատը։ Նոյն այդ դարաշրջաննե-
րուն վերջերն էր որ ցնցում մը բարձրացուց Իրանի լեռնադաշտը և
միեւնոյն ատեն, անոր փոխարէն, խոնարհեցուց այն երկու փոսերը,
որոնք կ'եզերեն այդ սարահարթը, այն է՝ Արալ-Կասպիական տա-
փարակը հիւսիսի մէջ և Պարսից ծոցը՝ հարաւի մէջ, իսկ Արաբիոյ և Ե-
գիպտոսի մէջ բացուեցաւ Կարմիր ծովը։ Երկու մեծ տափարակներ
— Պոնտոսեան (Սև ծովեան) և Արալ-Կասպիական — բաժնուեցան
Կովկասով։ Արեւմուտքի մէջ տարածուեցաւ Միջերկրական ծովը իր
բազմաթիւ կղզիներով, որոնք անյայտացած ցամաքին մնացորդներն
էին։ Հարաւի մէջ Պարսից ծոցը առաջացաւ ցամաքի մէջ և անոր
ջուրերը ողողեցին Սինճարի, Քիւրտիստանի, նոյնիսկ Հայաստանի
լեռներուն ստորոտները, Տաւրոսի և Կովկասի մեծամեծ շղթաները
Հայկական լեռնաստանի միջոցով միացան իրարու հետ և իրանական
սարահարթի միջոցով ալ կցուեցան Հինտու-Քուշուի և Միջին Ասիոյ
մեծ լեռնաստաններուն։
Մերձաւոր Ասիոյ կազմուածքը այս էր երբ մարդը երեւան եկաւ,
և տարածուեցաւ երկրի զանազան մասերը։ Իրեն հետ նաև տարած-
ուեցան հաստամորթ կենդանիները։ Սակայն եկան սառուցային դա-
րերը և բոլոր մեծ բարձրութիւնները ծածկուեցան ձիւնով։ Տաւրոսը,
Հայաստանը, Կովկասը, ամբողջ Իրանը, Հինտու-Քուշը և Ասիոյ կեդ-
րոնը ծածկուած էին սառնակոյտերով և ձիւնեղէն դաշտերով(1)։
Եւ դարերու, գուցէ և հազարամեակներու երկար յաջորդութեան
մը ընթացքին կ'ամայանան բոլոր այդ երկիրները և միայն միջին
տարածութիւնները կը մնան բնակուած։
Ասկէ վերջը դարձեալ տեղի կ'ունենան գետնաշարժեր, որոնցմէ
յետոյ սառուցային աշխարհը կ'ենթարկուի համատարած ողողումնե-
րուն։ Այս երկրաբանական շրջանի մասին որ կը կոչուի Pliestocène(2)

(1) Այս շրջանը կը կոչուի երկրաբաններու կողմէ Pliocène = Նո-
րոգահող։

(2) Pleistocène = Diluvium՝ հեղեղաբեր նիւթ (քար, աւազ, հող)։



հեղեղումները, որոնց յիշողութիւնը մարդկութիւնը պահած է այն
հնագոյն աւանդութեան մէջ, որ կը վերաբերի ամենայն ինչ ոչնչաց-
նող համաշխարհային Ջրհեղեղին — աւելի նուազեցուցին բնակելի
երկիրներուն սահմանները։
Քանի մը ընտանիքներ, որոնք կը բնակէին բարձրութիւններու
վրայ, հազիւ կրցան ազատիլ։
Հեռու վանուած իրենց դաշտերէն, մարդկութեան հատուածները
երկար ժամանակ չէին գիտեր ուր հաստատուիլ և կը վարէին թա-
փառական կեանք այդ չփոթ ժամանակներուն մէջ, որոնց տեւողու-
թիւնը յայտնի չէ։ Մեծ հովիտները խորացած էին, երկիրը ծած-
կուած էր հեղեղատներու բերած քարերով, հող, ուր երբեմն պտղա-
ռատ անտառներ կը տարածուէին։ Ջուրէն յետոյ՝ անապատ, ամայու-
թիւն։ Բարձր սարերը դեռ ծածկուած էին սառոյցներով, լեռնա-
դաշտերը՝ անհուն ադի լճերով, ծովը կը թափանցէր ցամաքի խորերը
և այս քարքարոտ անապատները թոյլ չէին տար բոյսերու աճման։
Աւերածութեան պատկերը կը լրացնէին բազմաթիւ հրաբուխներ,
որոնք կը գործէին Արաբիոյ, Իրանի սարահարթին և Կովկասի և
Հայաստանի լեռներուն մէջ, ժայթքելով կրակ, մոխիր և լաւա։
Սակայն բնութիւնը հետզհետէ կ'սկսի դարմանել այդ մեծամեծ
աւերները և կեանքի համար նպաստաւոր պայմաններ վերստեղծել։
Ու անոր չինարար ձեռքին մէջ հզօր գործիքներ կը հանդիսանան գե-
տերը։ Ասոնք սաստիկ արագավազ՝ իրենց հոսանքով կը քերեն կը
տանին լեռնային հողերը, որոնք տիղմի ձեւով կը նստին գետափ-
ները և պարարտ ու արգաւանդ չերտեր կը կազմեն։ (հմտ. Լէօ.
Հայ հայրենիքը, Թիֆլիս 1915 էջ 14–24), Լէօ, Հայոց պատմություն Ա. հատոր,
Հին պատմություն, Թիֆլիս, 1917, էջ 27–29 կամ J. de Morgan, «Les pre-
miers Civilisations», Paris, 1909, գլ. VII, G. Contenau. Manuel d'Arché-
ologie Orientale. I. Notions Générales, 1927 p. 112)։
Կապադովկիան ինչպէս կը տեսնուի վերի տեսութենէն իբր մասը
Անատոլեան աշխարհամասին կը ներկայացնէ իբր ցամաք հնագոյն
մասերէն մին երկրագունդին, որ ջուրերէն անդրագոյն ժամանակ-
ներու մէջ վեր կանգնած է և թերեւս աւելի մօտաւոր ժամանակնե-
րու մէջ փոփոխութեանց և վերիվայրումներու ենթարկուած, որոնց
յիշատակը թերեւս տարտամօրէն կը պահուի մինչև հիմա։
Աւանդութիւն մը կ'ըսէ թէ Կեսարիոյ դաշտը ատենօք լիճ մըն
էր և քաղաքը կը գտնուէր բլրաշարքի մը վրայ արդի քաղաքին հա-
րաւ-արեւմտեան կողմը, և քաղաքին և շրջակայ գիւղօրէից մէջ հա-
ղորդակցութիւնը կը կատարուէր լաստերու միջոցով։
Մի քանի տուեալներ կարծես թէ կը միտին հաստատելու այս ա-
ւանդութիւնը։
Նախ Կեսարիոյ քաղաքին արեւելքը, բլրաշարքի մը հարաւային
անկիւնը հաստատուած աւանը Թալաս կը կոչուի, որ յունարէն
բառ մըն է և կը նշանակէ ծով։
Նոյնպէս Կեսարիոյ հարաւային Պէշ-Թէփէլէր կոչուած բլուրներու
կողքին սեղմուած խորշ մը Տէնիզ գուլաղը (= ծովու ականջ) կ'ըսուի,
և վերջապէս քաղաքին շրջապատը դեռ գոյութիւն ունեցող ճահիճ-
ները կը կարծուին ըլլալ մնացորդները այդ ցամքած լիճին։

Սակայն այդ շատ հեռաւոր անցեալին մէջ ուր ամէն ինչ անորոշ է և պատուած խորհրդաւոր մշուշով մը, կարելի չէ յստակ իրողութիւններու կառչիլ։

Ինչ որ անժխտելի իրողութիւն է, սա է որ Կապադովկիա անդրպատմական ժամանակներէն սկսեալ մարդաբնակ եղած է։

Հնաբանները կ'ընդունին թէ այն ժամանակ, երբ դեռ Միջագետքի դաշտավայրը ջուրերու տակ ծածկուած էր, հայկական լեռնագաւառը մարդաբնակ էր և թէ մարդկութիւնը այստեղէն իջաւ դաշտավայր՝ միշտ հետեւելով ցամքած կամ նոր կազմուած երկրին աճող տարածութիւններուն (պրոֆ. Ա. Խաչատրյան. Հայաստանի նախ. հաս. պատմություն, Երեւան, 1933 էջ 60 և J. de Morgan, l'humanité préhistorique, էջ 294), որոնցմէ առաջին շարքին վրայ էր ապահովաբար Կապադովկիան։ Դժբախտաբար այս նախնական շրջանէն հետքեր չունինք։ Մարդկային պատմութեան համար հնագոյն վաւերագիրները կայծքարէ գործիքներն են։ Անոնք գտնուած են մինչև սառուցային շրջանի սկիզբը և առաջին սառուցաշրջանին և յաջորդին մինչև առնուազն երկու ըստ էութեան տարբեր մշակոյթներ գոյութիւն ունեցած են։

Մշակութային ուրիշ ցուցանիշներ շատ յետոյ միայն երեւան եկած են, ինչպէս որսական կախարդանքը որ երրորդ սառուցաշրջանին կը տեսնուի, մեռելներու թաղումը՝ վերջին սառուցաշրջանի սկիզբը, զարդարանքի, ինչպէս նաև նկարելու արուեստը, մարմնոյն վրայի զարդերը և ոսկորէ գործիքները դեռ փոքր ինչ աւելի ուշ։

Մարդկութեան պատմութեան սկիզբին համար ուրեմն ուրիշ աղբիւրներ չունինք՝ բայց եթէ գործիքները։ Ասոնցմէ գտնուած են նաև Կապադովկիոյ մէջ, հակառակ անոր որ դեռ հոն շատ քիչ կատարուած են պեղումներ։ Միայն որոշ է որ հոն ամենահին ժամանակներէ սկսեալ ապրող մարդիկը շատ երկար ատեն մնացած են նախնական վիճակի մէջ և չեն կրցած այդ երկիրը դարձնել իրենց կզզիացման մէջ, քաղաքակրթական մեծ օրրան մը, վասնզի ինչպէս յայտնի է առաջին քաղաքակրթական կայանները եղան մեծ գետերու հովիտները, և Կապադովկիա չունէր մեծ գետ մը։

Եփրատի, Տիգրիսի և Նեղոսի գետահովիտներուն մէջ հետեւաբար կազմակերպուեցան առաջին մեծ պետութիւնները, որոնք նախապէս ինքնաբաւ էին իրենց առանձնացած հովտային մշակոյթին արտադրութեամբ։

Սակայն այս վիճակը, որ կրնայ շատ երկար տեւած ըլլալ, կուգայ շրջան մը, որ հիմնական փոփոխութեան կ'ենթարկուի, նոյնիսկ անդրպատմական ժամանակներու մէջ, վասնզի կը տեսնենք որ Միջագետքն առեւտրական յարաբերութիւններ կ'ունենայ Արեւելքի մէջ Իրանի բարձրաւանդակին և Հնդկաստանի և Արեւմուտքի մէջ՝ Կարմիր ծովի, Եգիպտոսի, և Սուրիոյ հետ։ Եգիպտոսն ալ բացի արեւելեան վաճառականական հրապարակներէն՝ ծովով առեւտրական հաղորդակցութեան կը մտնէ Կիպրոսի, Եգէական կղզիներուն և Կրետէի հետ։

Այսպէս հնագոյն շրջանի մշակոյթը արդէն դուրս կ'ելլէ իր գետահովտային հանգամանքէն և կը դառնայ ծովային, ինչ որ նոյն ժամանակի համար կը նշանակէ համաշխարհային։ (պրոֆ. Ա. Խաչատրյան, Հայաստանի նախ. հաս. պատմություն. էջ 289)։

Այս կերպով Կապադովկիան ևս կը մտնէ համամարդկային շարժման մէջ, և գրեթէ այն օրէն կ'սկսի իր պատմութեան արշալոյսը, որովհետև ոեւէ երկրի պատմութիւն կ'սկսի այն օրէն, երբ հնարաւոր կը դառնայ ճանչնալ այնտեղ բնակող ժողովուրդը և հետեւիլ անոր քաղաքական ու մշակութային պատմութեան։

Այս տեսակէտով Կապադովկիոյ պատմութիւնը ուշ կ'սկսի բաւական, և անկարելի է անոր ծալքերուն մէջ գտնել հետքերը երկրաբանական փոփոխութիւններուն, հակառակ երկրաշարժներու բազմաթիւ յիշատակութեանց որոնք աւելի քանդած են մարդկային ձեռակերտները քան փոխած են երկրին նկարագիրը ու պատկերը, հնագոյն ժամանակներու մէջ պատահած խոշոր փոփոխութիւններ առաջացնելով։

Հետեւաբար կ'առնենք այսօրուան Կապադովկիան, այնպէս ինչպէս որ է, իբր չօշափելի իրողութիւն և անոր կազմը դիտելով կրնանք շուտով մակաբերել անոր անցեալը։

Կապադովկիա իբր երկրամաս իր արդի կազմովը կը ներկայացնէ լեռնային երկիր մը և իր մէջ կը պարունակէ հրաբխային կատարներ որոնք մինչև պատմական շրջաններ գործօն վիճակ մը ունեցած են և անշուշտ խոշոր աւերածութեանց և վերիվայրումներու պատճառ հանդիսացած։

Ստորերկրեայ հուրին ոյժով հողի բարձրացումները անոր մակերեւոյթին վրայ գոյացուցած են պասալդեան քառաժայռերու կոյտեր և հալած լաւայի հոսումներ, որոնք հազիւ ծածկուած են բուսական հողի քիչ թանձր խաւով մը։

Կապադովկիան, մասնաւորապէս անոր Արգէոսի շուրջը տարածուած մասը, քարուտ երկիր մըն է ամբողջ, և լեռները որոնք կը ցցուին հոն աւելի քարաժայռերու կոյտեր են՝ աննշան բացառութիւններով, իսկ իր դաշտագետինները՝ յաճախ խիճերու անապատներ։

Այս լեռները, բարձունքները, հանգչած հրաբուխները, և լաւայի մնացորդները, որոնց այնքան առատօրէն կը հանդիպի մարդ, ցոյց կուտան թէ այս հողամասին վրայ ցցուած լեռնազանգուածները և խորտուբորդները արդիւնք են հրաբխային շարժումներու, որոնք մասնաւորապէս Արգէոս և Ս. Բարսեղի լեռը(=Ալին տաղ) պատճառած են Կեսարիոյ շրջանին։

Հրաբխային գործունէութեան մը հետքերը ամէն կողմ կը տեսնուին գաւառին մէջ, որուն պատմական կեանքին շրջանին մէջ իսկ հրաբուխներ կատարած են ճակատագրական դեր մը մատնելով երկիրը աւերումներու և քանդումներու, իբր հետեւանք երկրաշարժերու որոնք յաւիտենական սպառնալիքը եղած են երկրին։

## Գ.

## ԼԵՌՆԱԳՐՈՒԹԻՒՆ



ԱՐԳԷՈՍ ԼԵՌԸ

*Կապադովկիա կը ներկայացնէ Փոքր Ասիոյ ամէնէն բարձր լեռնադաշտը որ իր կարգին իր վրայ կը կրէ լեռնային կատարներ և լեռնաշղթաներ։*

*Այս լեռներուն մէջ առաջին և գլխաւոր տեղը կը բռնէ* Արգէոս *կամ* Էրճիաս, *որ խորհրդանշանական լեռն է Կապադովկիոյ։*

Արգէոս *բառը կ'ստուգաբանուի* արխ=arg (=սպիտակ), արղոս արյե՛ս-ֆիս, argentum *բառերով։ (Հմտ.* Լևկոն օրոս *(Սպիտակ լեռ) Կրետէի և Սավուայի* Mont blanc-*ը)։* (Ծաղիկ. 1891 *էջ* 246, *Նոյնպէս Գարա Մէհ-մէտ աղա զադէ Քէմալէտտին* Erciyes Kayserisi ve Tarihine bir bakiş(1). 1934, *Կեսարիա էջ* 5 *և էջ* 118)։

*Արգէոս անունը ոմանք առնուած կը կարծեն Կապադովկիոյ թագաւորներէն մէկուն տղուն* Ճէրճիս *անունէն։ (Քէմալէտտին էջ* 118)։

*Ուրիշներ* Էյճասիպ *անուն իշխանի մը անունէն առնուած կը կարծեն, (նոյն) և կը կոչեն* Ճէպէլի Էրճասիպ *(Ծիվան Յ. Աչըգեան.* Գրպանի Տարեցոյց *Մ. Գարամաճեան.* 1934, *էջ* 168)։

*Հիները այս լեռը կը կոչէին Արգէոս* (Argaeus), *որմէ է ֆրանսերէն* Argée *բառը։*

*Քէմալէտտին իր աշխատութեան մէջ անշուշտ յենակէտ ունենալով Թուրք արդի երեւակայական և գիտական հիմէ զուրկ պատմագրութիւնը, որ Թուրք ցեղը կը նկատէ աշխարհի հնագոյն քաղաքակիրթ ժողովուրդը, բոլոր այս տեղեկութիւնները տալէ յետոյ, կը յայտնէ թէ* Էրճիաս *բառը բուն թուրքերէն է և Թուրք հերոսի մը՝* Էրճիկիսի *անունէն առնուած է։*

*Այս բառը Կեսարիոյ եւ շրջակայից մէջ կը հնչուի* Էրճիէզ, *մինչ ուրիշ տեղեր* Էրճիէս *կամ* Էրճիազ *կամ* Էրճիաս *ձեւով ալ կ'արտասանուի։ (Նոյն. էջ* 119)

*Աւելորդ է ըսել թէ թրքական այս ստուգաբանութիւնը ոչ մէկ արժէք կը ներկայացնէ։*

*Թուրքերը տակաւին Անատոլու ոտք չկոխած Արգէոս իր վեհատեսիլ ու պատկառելի երեւոյթով արդէն Փոքր Ասիոյ ժողովուրդին հիացման առարկայ եղած լեռն էր, որուն ստորոտն հնագոյն ժամանակներու մէջ մարդիկ հաւաքուած և քաղաքներ շինած էին։*

*Արարատ ինչպէս որ հայկական բարձրաւանդակէն վեր կանգնող բարձրագոյն կատարն է, Արգէոս նոյնպէս Կապադովկիոյ մեծ լեռնադաշտին մէջտեղը բարձրացող՝ մեծամասնութեամբ հրաբխային ծագումով հաստարեստ լեռներուն ամէնէն բարձրագոյն կատարն է և իր այդ հանգամանքով ներշնչող բարձրութիւնը եղած է Կապադովկիոյ և տեսակ մը խորհրդանշան ժողովուրդին համար որ անոր շուրջը ապրած է, կապուած անոր երկիւղով և անկէ ներշնչուած պաշտանքով։*

*Արգէոսի շուրջը ապրող ժողովուրդը իբր արտայայտութիւնը իր խոր տպաւորութեան, որ այդ լեռը թողած է իր վրայ, իր մասին*



ԱՐԳԷՈՍ

*հիւսած է առասպելներ, ինչպէս Արարատի շուրջը ապրող ժողովուրդը ստեղծագործած է աւանդութիւններ և վէպեր իր խորհրդանշանը դարձուցած լերան մասին։*

*Բրոֆ. Յովսէփ Պարչի տեսութեամբ Արգէոսն է որ ծնունդ տուած է հիներու Տիւփէոսի*(1) *զրոյցին։* (Joseph Partsch, Geologie und Mythologie in Kleinasien)

---

(1) *Այս գործը յետ այսու ամէն անգամ որ յիշել պէտք ունենամ* Քէմալէտտին *ըսելով պիտի բաւականանամ, համառօտութեան համար։*

(1) *Տիփէոս (լտ.* Typhoeus, *ֆր.* Typhée *կամ* Typhon). *յունական դիցաբանութեան մէջ այն տիտանն է որ ծնած է Տարտարոսէն (Դժոխք) և Երկիրէն, կամ ըստ ոմանց Հիրայէն։ Աստուածներու դէմ պատերազմին մէջ Տիտաններու պետն էր։ Յաղթուած շանթահարուեցաւ Զեւսէն և թաղուեցաւ Էտնայի ներքեւ։ Ասիկա կը ներկայացուէր կերպարանքովը բազմագլուխ օձի մը որ բոցեր կը ժայթքէր։*

Նշանաւոր աշխարհագիրն ու բանաստեղծա-
կան ամենահին աղբիւրը՝ Հոմերոս և Հեզիոտ տակաւին չեն գիտեր
Տիւփէոսի գրոյցին Եոնիա լեռը փոխադրուիլը։ Սիկիլիա բովանդակ
Իլիականին աշխարհագրական տեսութեան շրջանէն դուրս կը մնայ։
Իլիականը Զեւսի և Տիւփէոսի պատերազմը՝ որ առասպելական
բացայայտութիւն մըն է հրաբխային երեւոյթներու, կը դնէ եղած
Արիմացւոց քով։ Զարմանօք կը դիտուի թէ ինչպէս շարք մը յետա-
գայ բանաստեղծներ այս εἰν 'Αρίμοις (Արիմացիներու քով) բանա-
ձեւը պահած են հաստատուն իբր հայրենիք Տիւփէոսի (Իլիական. Բ.
780—5, Հեսիոդ. «Դիցածն.» 3?4, Պինդար՝ Հատակատորք. 93)։
Կիլիկիա է Տիւփէոսի հայրենիքը, Արիմացւոց քով Արամազդէն
կը յաղթուի, Եոնայի հրեղէն սիւներուն և Նաբոլիի ծոցին մէջ կը
յայտնուի պարտուած, հառաչող հրէշին բոցավառ շունչը։ Այս վա-
րանումը որ կայ Տիւփէոսի զրոյցն ամբողջովին ու պարզապէս Սիկի-
լիա փոխադրելու, միակ պատճառ մը կրնայ ունենալ՝ անփոփոխելի
հին աւանդութիւն մը որ հրաշունչ հսկային հայրենիքը Կիլիկիա կը
դնէ։ Այս աւանդութիւնն ալ անջատ կը գտնուի հին քանի մը մատե-



ԱՐԳԷՈՍ ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԷՆ ԷՍԿԻ ՇԷՀԻՐԷՆ ԴԻՏՈՒԱԾ

նագիրներու քով (Պինդար՝ Pyth. 6. 16. Ապողլոդ՝ 1. 6. 3. Պորփիւր և Եւսթատիոս ՄեկՑ. Իլլիակ. Բ. 783.) խիստ ընդարձակ և մանրա-մասնութիւններով՝ որ իրենց պարզութեամբը մեծ հնութեան հետքեր կը կրեն, Եւսթատիոսի մէկ տեղեկութեան մէջ։ (Zimmerer, նոյն և J. Markwart. «Berceau des Arméniens» Revue des études Arméniennes. t. VIII p. 215-216).



Հսկաներու եղծման վրայ բարկացած՝ Գէ Հերայի առջև կը ղըր-պարտէ Զեւսը, և Հերա Կրոնոսի խորհուրդ կը հարցընէ։ Կրոնոս եր-կու հաւկիթ կուտայ ապսպրելով որ գետինը դնէ, որմէ Զեւսի դէմ հզօր հակառակորդ մը պիտի ելլէ։ Հերա հաւկիթները կը դնէ Կիլի-կիոյ Արիմէական լեռներուն տակ։ Երբ հաւկիթներէն Տիւփէոս կ'ելլէ, Հերա զղջալով, կ'իմացընէ ինքնին Զեւսի, որ շանթահար կ'ընէ հրէ-շը։ Տիւփէոսի Կիլիկիա ծնելու այս աւանդութիւնը անով աւելի ապա-հովապէս հարազատ է՝ որ զրոյցին՝ յետոյ Կիլիկիա փոխադրուելուն որեւէ առիթ չի կար. վասնզի Տաւրոսի հարաւային ստորոտը տա-րածուող երկիրն ոեւէ հրաբխային լեռ չունի, ազատ ըլլալով ընդ-հանրապէս ոեւէ հրաբխային արտադրութիւններէ։ Զրոյցին փոքրա-սիական հայրենիքն աւելի մօտէն որոշելու ծառայող երեք կէտերը, այսինքն հրաբխային բնութիւն, Կիլիկիոյ վերաբերիլը և Արիմացւոց ազգէն ըլլալը, կարծես թէ թերակղզիին ոեւէ մէկ կէտին վրայ չեն գար միանար, բացի Կապադովկիայէն, երբ մանաւանդ հարց տանք թէ՝ «Ունի՞ Փոքր Ասիա ընդհանրապէս երկիր մը մեծաշուք հրաբխա-յին երեւոյթներով, որոնց զննութենէն ծագիլ կարենար Տիւփէոսի զրոյցը»։

Արդ, փոքրասիական ցամաքը միակ հրաբուխ մը ունի, որ մինչև պատմական ժամանակները կը գործէր, Կապադովկիոյ Արգէոսը, Միջերկրական շրջանին ամենաբարձր հրաբխային լեռը, միակը որ իր ժայթքած նիւթերու հսկայական քանակով և տարածութեամբը կրնայ համեմատուիլ Եոնայի հետ։ (Zimmerer, ՀԱ. 1900. էջ 129-130)։

Տասն բիւրամէթր քառակուսի մեծութեամբ խարիսխի մը վրայ, որ ծովէն արդէն 1100—1200 մէթր բարձր է, կը բարձրանայ սառնա-



ԱՐԳԷՈՍ ԼԵՌԸ ՈՒ ԶՕՄԱԽԼՈՒԻ ՎԵՐԻ ԹԱՂԻՆ ՄԷԿ ՄԱՍԸ

կոյտով ծածկուած գագաթի խառնարանին հսկայ լեռնակոնը, որուն
ողոցաձև փռեկտուած եզերքէն քանի մը անհեղ, անմատչելի ժայ-
ռատամունք վեր կը ցցուին մինչև 4000 մեթր բարձրութեամբ ըստ
Կուպերի(1), Տոզերի(2), Ֆաոնուորթի և Համիլթընի(3)։ (տես. Նոյն)
Արգէոսը երեք բարձրաբերձ գագաթներ ունի, Բուն Արգէոս, Հո-
գային Արգէոս, Փոքր Արգէոս անուններով։ (Ճիվան Թ. Աշըգեան.
Գրպանի Տարեցոյց, 1934. էջ 17)։

Հրաբուխին կողերը կը ծածկեն բազմութիւն մը փոքր, մակաբոյծ
հրաբխային կոներ, աւելի բազմաթիւ՝ լերան ոտքը ցանուած։ Ինչ-
պէս ուրիշ բարձրաբերձ հրաբուխներու շուրջը տեսնուած է, ճիշդ
ժայթքման այս ցած բերանները տակաւին երկար ատեն իրենց հրա-
բխային կենդանութիւնը կը պահեն՝ բուն գագաթին խառնարանին
մարելէն ետքն ալ։ Այս կը հաստատէ Ստրաբոն բացորոշ կերպով
(ԺԲ. Բ. 7 էջ 538. Կղաւդիոս Եւտոպ. Բ. 114.)

Ստրաբոնի ժամանակ երբ լերան կատարը ըստ երևոյթին առանց
վտանգի կրնար մարդ ելլել, հիւսիսային զառիթափը՝ դէպի Մաժակ-
կեսարիա՝ ո՛չ միայն ծածկուած էր անբերրի մոխրադաշտերով, այլ
նաև բոցավառ լաւայով լի խառնարաններով։

Հրաբխային այն շրջանակին համար նման վիճակ մը կը մատնա-
նշեն Կղաւդիոսի տողերը։ Այս մատենագիրը որ կ'ապրէր Դ. դարուն
(Քր.է վերջ) և յաճախ կը խօսի Արգէոսի և անոր ձիերուն վրայ։

Մաքսիմոս Տիւրոսի (Maximos Tyrios) մէկ կարճ դիտողութիւնը
կը ցուցընէ որ հրացայտ հսկայ լեռը ժողովրդեան կրօնական գա-
ղափարներու վրայ ալ ազդած է։

Բազմաթիւ դրամներու վրայ կը գտնենք լերան պատկերը (տես.
Mionnet, descript. de Méd. art. IV. 407-437. Suppl. VII. 66?-708.
Imboof - Blumer, Monn. Grecq., Leipzig. 1883. էջ 418—9.) սակայն
ասոնք առասպելական քիչ նիւթ կը պարունակեն։

Կայ միայն պատկերներուն վրայ քանդակուած լերան գագաթին
ներքև անձաւ մը. արդեօք իբր բնակարա՞ն կարծեցեալ լերան ոգիին

(1) Cooper՝ Արգէոսի բարձրութիւնը նշանակած է ծովէն 3993 մեթր.
(Քէմալէտտին էջ 119)։

(2) Dozer՝ Արգէոսի բարձրութիւնը նշանակած է 4908 մեթր. (Քէ-
մալէտտին էջ 119)։

(3) Hamilton՝ անոր բարձրութիւնը նշանակած է 3961 մեթր, որ
տպագրական սխալով մը անշուշտ (Քէմալէտտին էջ 119) նշանակած է
4967 մեթր։

Չիհաչէֆ՝ Արգէոսի կ'ընծայէ 3841 մեթր բացարձակ բարձրութիւն
մը, դաշտին բարձրութիւնը ըլլալով. ըստ իրեն, 1084 մեթր բարձր
ծովին մակերևոյթէն, ինչպէս Zimmerer ալ կը հաստատէր։

Բրիտանական Համագիտարանը Արգէոսի բարձրութիւնը նշանա-
կած է 13,000 ոտք մինչ Ալիշան՝ իր Աշխարհագրութեան մէջ (էջ 511)
կը նշանակէ, անշուշտ ուրիշ աղբիւրէ մը օգտուելով՝ 12,200 ոտք,
մինչ նոյն գործին մէկ ուրիշ էջին վրայ (էջ 558) կը նշանակէ
13,000 ոտք։ Բրիտանական սպայակոյտի քարտէսներէն մէկուն վրայ
նշանակուած տեսանք 12,563 ոտք։ Ինչպէս կը տեսնուի ընդհանուր
ընդունուած թիւ մը չկայ։



կամ հրաշունչ դեւին։ Նկատելով այս և միւս պարագաները, կարելի
է մտածել թէ հրաշունչ Արգէոսի այս լերան ոգին եղած է նախագա-
ղափարը յունական Տիւփէոսի, քանի որ միայն այս լեռը կրնար
հրաբխային երևոյթներու մեծասքանչ տեսարանները ցոյց տալ
Փոքր Ասիոյ բնակիչներուն, որոնց տպաւորութիւնները առասպելա-
կան կերպարանք ստացած են Տիւփէոսի առասպելին մէջ։

Կիլիկիա ծնիլը ու Արիմացւոց ազգէն ըլլալը կրնայ մեկնուիլ։
Արգէոսի Կիլիկիոյ վերաբերիլը՝ վերջինին նախնական ընդարձակու-



ԱՐԳԷՈՍ ԵՒ ԶՈՄԱԽԼՈՒԻ ՎԱՐԻ ԹԱՂԻՆ ՄԷԿ ՄԱՍԸ

թեան ատեն՝ անտարակոյս է։ Նոյնիսկ իբր պարսկական նահանգ
Կիլիկիա չէր եզերուեր Տաւրոսէն, այլ կը հասնէր Կապադովկիոյ
ներսերը, հիւսիսէն՝ մինչև Ալիս, հիւսիս-արևելքէն մինչև Եփրատ։
(տես. Հերոդոտոս. ա. 72. գ. 90. ե. 49. 52 և Stein-ի հրատարակու-
թեան կից Կիբերտի քարտէսը)։

Արգէոսի բոլոր հնութեան մէջ հռչակուած ձիաստանները կը մա-
տակարարէին այն ձիերը, զոր Կիլիկիա արքայից արքային իբր հարկ
կը ղրկէր։ Կիլիկիա անունը յետոյ ալ մնաց անխախուտ։ Կապադով-
կիա իբր թագաւորութիւն և իբր Հռոմէական նահանգ տասը ստրա-
պութեանց կը բաժնուէր։ Մաժակ-Կեսարիոյ ստրապութիւնը՝ Արգէ-
ոսի հետ, կը կոչուէր Կիլիկիա (տես. Ստրաբոն ԺԲ. 1. 2. էջ 533-4.
դարձեալ 2. 7. էջ 537-8. Պտղոմէոս ե. 6-15)։

Դժուարագոյն է Արիմացւոց ազգին վերաբերելու կէտը, բայց
բրոֆ. Ժօզէֆ Պարչ այն հանճարեղ ցուցումը կ'ընէ թէ Յոյնք, Արի-
մացիքը և Արամէացիքը իրարու հետ կը նոյնացընէին, ինչպէս Հերո-
դոտոս կ'ըսէ թէ «Կապադովկիացիք Հելլէններէն Ասորիք կը կոչուէին»
(οἱ Καππαθόκοι ὑπ' Ἑλλήνιον Σύρωι σύνομάζονται) (Զիմմէրէր ՀԱ. 1900
էջ 129-131)։

Հետեւաբար բրոֆ. Ցովէփ Գարշի տեսութեամբ գրեթէ անժխտելի է Տիւփէոսի ծնունդին կապադովկեան ծագումը, որ կրնայ արդիւնքն համարուիլ այն գերազանց ազդեցութեան որ Արգէոս իր հաստաբեստ զանգուածով և հրաբխային ու անհանգարտ բնոյթովը թողած էր իր շուրջը ապրող ժողովուրդին վրայ։

Անիկա անձնաւորուած է ժողովրդային մտքին մէջ այնպէս որ մինչև հիմա երբ ձմեռը մոխրագոյն ամպով մը կը ծածկուի իր տեսքը ժողովուրդը կ'ըսէ «Արգէոս իր մուշտակը հագաւ»։

Այս անձնաւորման մէջ կարեւոր դեր մը կատարած ըլլալ կը թուի իր գործօն հրաբուխի մը հանգամանքը պահած ըլլալը մինչև պատմական ժամանակներ։

Անիկա իր հրաբխային բորբոքումներով և անոնց ընկերացող զարհուրելի երկրաշարժներով որոնք շատ անգամ աւերած են երկիրը և հիմնայատակ կործանած՝ քաղաքներ և գիւղեր, բնական է որ խորունկ ազդեցութիւն մը պիտի թողուր իր շուրջը ապրող ժողո-



ԱՐԳԷՈՍԻ ԿԱՏԱՐԸ

վուրդին վրայ, որուն բախտը յաճախ կախուած էր անոր քմահաճոյքէն։

Արգէոս հրաբուխ էր դեռ Հռոմէական տիրապետութեան շրջանին կայսրերու ժամանակ, այնպէս որ Կարակալլա կայսեր ժամանակ Կապադովկիոյ համար շրջաբերութեան հանուած դրամին վրայ գրուած էր՝ անշուշտ այս պատճառով Mons Argaeus flammis coruscus (= բոցավառ Արգէոս լեռ):

Ասկէ զատ Ստրաբոն Կապադովկիացի աշխարհագիրը, որ Քրիստոսէ առաջ Ա. դարուն ապրած է, իբր ականատես կը վկայէ թէ Արգէոս իր օրերուն դեռ գործօն հրաբուխ մը կը ներկայացնէր, և շատ դժուար էր և քիչեր յաջողած էին անոր վրայ բարձրանալ, ո՛չ միայն սեպ և անմատչելի ըլլալուն, այլ նաև հրաբուխի խառնարաններուն համար, որոնք լի էին հրաշէկ լաւայով՝ զոր կը գտնենք լերան կողերուն վրայ։ (Zimmerer. ՀԱ. 1930 էջ 129)։

Ստրաբոնի վկայութեամբ գագաթ ելլել յաջողողները՝ պայծառ օդով կրցած են կ'ըսուի՝ տեսնել Պոնտոսն ու Միջերկրականը։ Հրաբուխին կողերը ծածկուած էին բազմաթիւ կողմնական կոներով, որոնք բուն գագաթին գլխաւոր խառնարանին մարելէն ետքն ալ՝ գործօն մնացած էին։

Նոր ժամանակներու մէջ հրաբխային բորբոքումներ չէր ունեցած և ասոր համար բոլորովին մարած կը կարծուէր, երբ 1880ին յանկարծ կրկին գործել սկսաւ (Zimmerer ՀԱ. 1930 էջ 129)։

Իսկ երկրաշարժներ յաճախ կը պատահէին։ Ասոնցմէ նշանաւոր եղած են 1717 ապրիլ 26ին և 1835 օգոստոս 1ին(1) պատահածները, որոնք մեծ աւերներ պատճառած են Կեսարիոյ և բոլոր գաւառին։ Արգէոս ամառ ձմեռ ձիւնապարդ է։

Ամառը Արգէոսէն բերուած ձիւնը իբր «Էրճիասի պտուղ» կը ծախուի և սառի պէտքը կը լրացնէ Կեսարիային որ 25 քիլօմէթր միայն հեռու է Արգէոսէն։ Ան իր շատ մը կատարներով և բարձունքներով, հալած ժայռերու հեղումներով, 1150 քիլոմէթր խորանարդ զանգուած մը կը ներկայացնէ, որ խոր տպաւորութիւն մը կը թողու դէպի Կեսարիա ուղեւորող ոևէ ճամբորդի վրայ։

Երկու գրագէտ ու բանաստեղծ հայ հեղինակներ, ուրիշներու կարգին, իրենց տպաւորութիւնները գրի առած են։

Շահեկան կը համարենք զանոնք հոս ներկայացնել գաղափար մը տալու համար այն ներշնչումին որ այս պատկառելի լեռը թողած է բանաստեղծ հոգիներու վրայ, որոնք երկուքն ալ միեւնոյն տարին գրեթէ քանի մը ամիսներու տարբերութեամբ Կեսարիա մտած են մին Արեւմուտքէն՝ Կ. Պոլսէն և միւսը Արեւելքէն՝ Սեբաստիայէն գալով։

Ամեն. Տ. Թորգոմ Արքեպ. Գուշակեան, Երուսաղէմի արդի Ս. Պատրիարքը, որ Սեբաստիոյ առաջնորդութենէն հրաժարած՝ ցամաքի ճամբով Կ. Պոլիս եկած ատեն կը հանդիպի Կեսարիա եւս, արեւմրտեան կողմէն, Սուլթան խանէն մտնելով Արգէոսի հորիզոնին մէջ։

Տ. Թորգոմ Արքեպ. Սուլթան-խանէն կը մեկնի 9 Նոյեմ. 1913ին առտուն և կէսօրուան մօտ, պահ մը կ'իջնէ կառքէն և կը տեսնէ Էրճիասը որմէ կրած իր տպաւորութիւնները գրի առած է իր ուղեգրականներուն մէջ որոնք ձամբու վերյիշումներ խորագրով հրատարակուած են Բիւզանդիոնի մէջ։

Ահա իր բառերը։

«Դիմացնիս է Էրճիաս, Կապադովկիացւոց պատմական լեռը:

(1) Vital Cuinetի (Le Turquie d'Asie. Géographie Administrative Statistique descriptive et raisonnée de chaque province de l'Asie Mineure 1893 Paris. tome I. p. 305) համաձայն, իսկ Ալիշան (Աշխարհագրութիւն էջ 558) 1825 օգոստոս կը նշանակէ այս երկրաշարժին թուականը։

Գլուխէն մինչեւ ոտքը ձիւն հագած՝ ան կ'իշխէ ամբողջ տեսարանին վրայ:

Սիրուն է լեռներու տեսքը. աւելի գարնան եղանակին մէջ անշուշտ, երբ անտառներուն խորհրդաւոր մթութիւնը, ճապառածներուն տմոյն լերկութիւնը, ցիրուցան մարգերու ծիծղուն դալարիքը, ու ատոնց ամէնուն վրայ ամպէ ապարօշի մը մէջէն բարձրացող ձիւնապատ գագաթներ գեղեցկութեան եւ ուժի, տեւականութեան եւ կեանքի խորհուրդը կ'արձանագրեն լուռ անջրպետին մէջ:

Հիմակ, աշնանավերջի այս մռայլ եղանակին, երբ ձիւնեղէն անծիր պատմուճանի մը մէջ ծածկուած, բնութեան հանգիստը կը պատկերացնեն անոնք, հազիւ թէ կրնան զատել անցորդին նայուածքը:

Բայց Արգէոս, իբրեւ ամենէն պատկառելի բարձրութիւնը Կապադովկիոյ եւ շրջակայ սահմաններէն ներս, իր պատմական յիշատակներուն եւ աւանդական զրուցավէպերուն շնորհիւ իսկ, միշտ հրապուրիչ բան մը ունի իր անունին հմայքին մէջ:

Հեռուն, շա՛տ հեռուն, թիկունքէն՝ հորիզոնին ամբողջ երկնայնքը պար բռնած լեռնաշղթայի մը, վեր տնկած է ան իր վիթխարի զանգուածը, անկանոն ու անհամաչափ եռանկիւնաձեւի մը խառնակ շրջագիծովը, որուն տեսքը կը խաբէ նախ տպաւորութիւնը՝ իր իսկական բարձրութեան մասին:

Անոնք որ տեսած են Մասիսը, առաջին զգացումով չեն կրնար զմայլիլ Արգէոսի առջեւ. աս չունի անոր վեհաշուք կացքը, որով ան դէպի երկնահաղորդ բարձրութիւններ կը ցցէ իր յաւերժաձիւն՝ սրածայր գագաթը, եւ սակայն, որքա՛ն նայուածքդ կ'ընտանենայ իրեն, ո՛րքան կը պարզուին տեսարանին մանրամասնութիւնները, այնքան կ'սկսիս պատկառանքով դիտել այս լեռն ալ:

Բայց լեռ մ'ըլլալէ աւելի լեռնախումբ մըն է կարծես:

Աւելի կամ նուազ բարձր, մեծ ու փոքր բազմաթիւ գագաթներ, հեռաւորութեան մէջ իրարու խառնուած, կը ձեւացնեն լեռներու բազմագլխի կոյտ մը, որուն ծայրը, շահապետող բարձրութեան մը վրայ, գահագլուխ կը բազմի կեդրոնական մեծ սարը:

Ահագին կտոր մը փրթած ինկած է կարծես, ո՛վ գիտէ ո՛րքան հեռաւոր անցեալի մը մէջ, անոր գագաթին ձիւնէն, հոն փորելով լայն խոռոչ մը, ուր ստուերի մթութիւններ կը նշմարուին այնքան հեռուէն, ձիւնի այդ մաքուր սպիտակութեան վրայ:

Թանձրացած մշուշ մը կը ծածանի հոս, անդունդին այդ երախին վրայ պատրանքը տալով հրախառն շունչի մը, որ դուրս կ'ելլէ լերան ընդերքէն:

Ամպի այդ ծուէնը քնացող հսկային կենդանութեան նշանն է կարծես.... բնապաշտական հաւատքի հին դարերուն, երբ աչքն ոգիի մը շարժումը կը տեսնէր ամէն ձեւի՝ ամէն երեւոյթի մէջ, այսպիսի պատկերներ ինչե՛ր չէին թելադրեր արդեօք երկիւղով եւ երեւակայութեամբ տենդավառուած մարդկային միտքին:

Անքթիթ պշշացումով մը, կը դիտեմ շատ երկար այս խրոխտ պատկերը, նայուածքս մէկէն միւսը յածեցնելով անդադար՝ աստիճանաւորուած բարձունքներու այդ սանդղաշարքին վրայ» (*Տես* Բիւզանդիոն 1914 *մարտ* 12 *թ.* 5286):

*Նոյնպէս Վահան Թէքէեան որ 2 սեպտ. 1913ին Կ. Պոլիսէն կը մեկնի դէպի Կեսարիա, ստանձնելու համար Ս. Կարապետի վանքին վարժարանին տնօրէնութիւնը, սեպտ. 6ին կը հասնի Նիյտէ ուր կը նշմարէ առաջին անգամ Էրճիասը գիշերով:*

*Հետեւեալ օրը (7 սեպտ. 1913) զայն լիութեան մէջ է որ կը տեսնայ և գրի կ'առնէ իր տպաւորութիւնները զորս հոս կ'արտագրեմ, իբր տպաւորութիւնները արդի ապրող Հայ բանաստեղծներու լաւագոյնին որ միանգամայն փառքերէն մէկը կը կազմէ Կեսարիոյ, իբր զաւակը կեսարիացի ծանօթ ընտանիքի մը:*



«Էրճիասի հետ իմ հանդիպումս երէկ իրիկուն տեղի ունեցաւ: Պոռէն առաջ էր, դաշտին մէջ: Առաւօտէն ի վեր ես զայն կը հարցնէի եւ հորիզոնին վրայ կը փնտռէի, երբ բլուրի մը քղանցքէն դարձին Պոստը(1) անտարբեր ձայնով մը մրմնջեց.

— Էրճիասը երեւցաւ:

*Եայլը*-ին(2) մէջ ընկողմանած էի ու անմիջապէս շտկուեցայ. ո՛չ անոր՝ այլ ուրիշ ներքին զսպանակէ մը մղուածի պէս: Հեռուն հորիզոնին վրայ, ուրիշ լեռներու ետեւէն ստուերագծուող ու ամպերու հետ գրեթէ շփոթուող՝ նախ մէկ, յետոյ երկու գլուխներ էին որոնց ներքեւ շուտով կազմուեցաւ կոնակ մը աջակողմէն: Ամբողջութիւնը իմ վրաս տպաւորութիւնը թողուց մէկ քովին, մէկ



ԱՐԳԷՈՍԻ ԵՌԱԳԱԳԱԹ ԿԱՏԱՐԸ

թեւին կռթնած կաղ ծերունիի մը, որ սակայն հսկայի տեղ ունենալու էր:

Այս տգեղութիւնը զիս անհանգիստ կ'ընէր եւ կ'ուզէի մտքէս վանել զայն: Անոր համար, պէտք էր գտնել իրականին համապատասխանող ուրիշ պատկեր մը, որ կ'զգայի թէ կար բայց զայն գտնելու համար պէտք էր փնտռել միայն՝ ինչպէս կ'ընենք նկարահանելուկի մը վրայ նայելով:

Անկէ ի վեր, միշտ մեր դէմը ունեցանք Էրճիասը եւ գրեթէ միշտ՝ իր վրայ գացինք:

(1) *Կառապանը*

(2) *զսպանակաւոր ճամբորդութեան սայլ ձիաքարշ:*

Երբեմն աւելի լայն կ'երեւէր, իր ամբողջ փէշերովը, եւ երբեմն ալ նորէն կը պզտիկնար ու երկինքին մէջ միացած իր երկու գագաթները միայն կը թողուր: Նայելով ու նայելով իր վրայ, այլեւս վարժուեր էի իր տեսքին, կարծես ընտանեցեր էի իրեն: Եւ ահա իրիկունը, երբ ընդարձակ ամայի դաշտին վրայ արեւն անհետացաւ առանց վերջալոյսի ու բաց-կանաչ լոյս մը տարածուեցաւ ու ընդ երկար կախուեցաւ մեր շուրջը, ես՝ Էրճիասի կը նայէի առանց զայն տեսնելու, յանկարծ տեսայ զայն երկու առիւծներու կերպարանքով: Մէկը աւելի մեծ եւ միւսը աւելի փոքր, մէկը առաջօք եւ միւսը քիչ մը ետի, դէմ դիմաց նստած երկու առիւծներ որոնք դարերէ ի վեր հոն կ'սպասեն այդպէս հանգիստ ու անշարժ, եւ որոնք թերեւս ոչ ոքի երեւցեր էին ինձմէ առաջ...: Այս պատկերը լաւագոյն էր քան խեղանդամ ծերունին հսկայի երեւոյթը, որ իսկոյն անհետացաւ արդէն՝ անվերադառնալի կերպով...: Վախս այն էր միայն՝ որ դիրքերնիս փոխելով, առիւծներու պատկերն ալ կրնար փոխուիլ ու ջնջուիլ: Բարեբախտաբար որչափ կը յառաջանայինք ու կը դառնայինք իրենց շուրջը, առիւծները կը մնան միշտ նոյն եւ այս պահուս դեռ դիմացս են անոնք մեծը իր ամբողջ մարմնովը երկնցած-նստած, ետեւի ոտքերը դէպի դուրս, կուրծքը ընդ առաջ եւ գլուխն այնպէս մը միւսին ուղղուած որ կարծես կը հսկէ զայն: Պզտիկն ու գլուխը, մանաւանդ, կատարելապէս նման են ...»:

*Վահան Թէքէեան կէս օրին կը հասնի Ինճէ-Սու ուրկէ իր ուղին կը շարունակէ:*

*Ճամբուն ընթացքին գագաթի մը համար կառքէն կ'իջնէ:*

«Ահա նորէն Էրճիասը. այս անգամ շատ մօտէն տեսնուած ու այս պատճառաւ թեթեւօրէն սպիտակ, իր մէկ գագաթին վրայ: Այդ ձիւնը երբէք չի հալիր, կ'ըսեն»: (*Վահան Թէքէեան*. Կեսարիա երթուդարձի եւ բնակութեան օրագիր մը 1913 սեպտ.— 1914 յունվար Ժողովուրդի Ձայն-Ժամանակ. *թ*. 809/4105. 9 *յունիս*):

*Արգէոսի գլխաւոր կատարին շուրջ կան իրեն ենթակայ ուրիշ գագաթներ (Թէփէ), ինչպէս դէպի հիւսիս՝ Կեսարիոյ ուղղութեան վրայ, Լիֆօս կամ Լիկոս* (8035 *ոտք*), *Միւս Տօնտուրան* (8965 *ոտք*), *Քէքլիք* (8006 *ոտք*), *Արգա* (5575 *ոտք*), *Շարիք* (5595 *ոտք*), *Իւն* (4390 *ոտք*) *Թէփէ անունով գագաթները:*

*Արգէոսի արեւմտեան կողմը կը գտնուին Ճըլպաք* (8435), *Եատի-կար* (8538), *Էռ* (7840) *և Ալի տաղ* (7180 *ոտք*) *և աւելի հարաւ Էվլիէ* (6550), *Շէյխ Արսլան* (7613), *Իւչ* (7754), *Պէլիք Արթինի* (7692), *Կիւ* (7756), *Դարասիվրի* (6980), *Պէչ բարմաք* (9805 *ոտք*) *և վերջապէս Էվլէրէկի մօտ Գարնը Եարըք* (5075 *ոտք*) *և Գապաք* (7635 *ոտք*) *Թէփէ գագաթները:*

*Իսկ արեւմտեան կողմը կը տեսնուին Գօչ տաղ և Մառաչաք տաղ կատարները:*

*Արգէոսէն զատ, Կապադովկիոյ մեծ լեռնադաշտէն դուրս ցցուած են նաև առանձին խումբեր կամ հաստաբեստ ուրիշ լեռներ, նոյնպէս մեծամասնութեամբ հրաբխային ծագումով:*

*Այսպէս լեռնադաշտին հարաւ արեւմտեան կողմը կը բարձրանայ Հասան տաղ* 1200 *մէթր կամ* 8000 *ոտք բարձրութեամբ, երկրորդը Կապադովկիոյ լեռներուն ըստ եւրոպացի ուղեգիրներուն:* (Բրիտանական Հանրագիտարան *և* Թէմալէտտին *էջ* 12), *Խընզըր տաղ* (1580 *մէթր*, *Հաճընի հիւսիսային կողմը գտնուած լեռներէն մին, որ Անտիտաւ-*



*րոսի շղթային կը պատկանի* (Միտուան *էջ* 5 *և* 158) *և կ'իյնայ մօտերը Ագիգիլէին, Ալի Տաղ* (1150 *մէթր կամ* 6006 *ոտք*) *կը գտնուի Թալասի մօտ, Արգէոսի դիմացը*(1)*: Թուրքերէն այս անունը տրուած է իրենց յատուկ աւանդութեան մը համեմատ:* (*Նարհիմ* Տադիկ. 1890 *թ*. 42)*: Հայերը* Բարսեղ Հայրապետ տաղը *կ'ըսեն և յոյները* Այ-Վասիլ: *Կեսարիոյ քրիստոնեաներուն մէջ պահուած աւանդութեան մը համաձայն այս լերան վրայ է որ Բարսեղ Հայրապետ տեսած է պատմական երազը Յուլիանոս Ուրացողի մասին* (նոյն)*:*

*Ժողովուրդը այս լեռն ալ անձնաւորած է և անոր շուրջը կազմած է առասպելներ:*

*Աւանդութեան մը համաձայն անձնաւորեալ այս լեռը՝ Ալի կ'ուզէր Մէքքէ երթալ և Արգէոս իրեն ճամբայ չէր տար, հակառակ իր հրամանին: Այն ատեն խոյամութեան սուրբը կողով առ կողով սկսաւ փոխադրել անոր հողը և այդպէսով անցք մը բացաւ իրեն:*

*Բայց կողովներէն մէկը թափեցաւ, որուն առջև Ալի բացագանչութիւն մը արձակեց և այդ կողովէն թափած հողը բլուր մը կազմեց որ մինչև հիմա որոշապէս կ'երեւի և կ'անուանուի Ալիի բերնէն թռած բացագանչութեամբը...* Իլիմօս: (*Վահան Թէքէեան*. Կեսարիա երթուդարձի եւ բնակութեան օրագիր մը. 1913 *սեպտ*. – 1914 *յունվար*. Ժողովուրդի Ձայն-Ժամանակ *թիւ* 809 – 4105. 9 *յունիս* 1921)*:*

*Այսպէս ժողովուրդը կը մեկնէր Լիֆօս անունը այն կատարին որ կը գտնուէր Արգէոսէն Ալի Տաղ երկարող ճամբուն վրայ:*

*Վահան Թէքէեան իրաւամբ գիտել կու տայ թէ* «առասպելը շատ գրաւիչ չէ, ո՛չ ալ բացագանչութիւնը... մատչելի»:

*Բարսեղ Հայրապետին բլուրէն զատ որ հազիւ ժամուան մը հեռաւորութիւն ունի, Կեսարիայէն երկուքուկէս ժամ հեռու կը գտնուի Եըլանլը լեռը, որուն ետեւի կողմը ամբողջովին լերկ է: Այս լերան վրայ կ'երեւին մարդու կերպարանքով երկու ժայռեր՝ որոնց համար հետեւեալ վսեմի մօտեցող աւանդութիւնը պատմած է Քինէ.*

«Այր մը եւ կին մը, կ'ըսէ աւանդութիւնը. այս լերան գագաթը կը բարձրանան: Կ'երեւի թէ այն ատեն ալ այս կողմերու բնակիչները կերուխում կը սիրէին, որովհետեւ անոնք, այս մենաւոր բարձունքին վրայ ուր եկեր էին *քէյֆ* ընելու, այնքան կը գինովնան գինիով եւ նաւանօրէն նաեւ իրարմով, այնքան կ'ոգեւորուին երգելով, պարելով ու անշուշտ ուրիշ կերպով ալ, որ բոլորովին կը մոռնան ինքզինքնին եւ երբ կը տեսնեն որ գինին կ'սպառի՝ «վերջին բաժակը — կ'ըսէ աւանդավէպը — կը քամեն *Աստուծոյ կենացը...*» կամ, ըստ նոյն աւանդութեան ուրիշ մէկ ձեւին, «բաժակը գաւազանի մը ծայրը կապելով *կ'երկարեն երկինք՝ Աստուծոյ...*»: Եւ Աստուած, զայրացած, տեղնիտեղը կը քարացնէ զանոնք, այդ ամբարիշտ այրն ու կինը... ու մինչեւ այսօր մայրերը հոն կը տանին իրենց զաւակները եւ զանոնք գինեմոլութենէ զգուշացնելու համար ցոյց կու տան այդ պատժուած, *քար կտրած* ամոլին մարմինները...»: (*Վ. Թէքէեան*, Ժողովուրդի Ձայն-Ժամանակ *թ*. 833-4129, 24 *յունիս* 1921)*:*

---

(1) *Ալի տաղ մը յիշեցի արդէն Արգէոսի իբր ենթակայ կատար, անոր արեւմտեան կողմը: Ասիկա պէտք չէ շփոթել այդ կատարին հետ, որ արեւելեան-հիւսիսային կողմն է և անջատ Արգէոսի զանգուածէն:*

Կեսարիոյ գաւառին լեռնագրութիւնը լրացնելու համար ըսենք թէ Երճիասի լեռնազանգուածին հետ աւելի կամ նուազ կապ ունեցող այս լեռներու շարքէն անջատօրէն կան նաև Կեսարիոյ հիւսիս-արեւելեան կողմը Գօրամազ Տաղ լեռնազանգուածը, որոնց գլխաւոր կատարը 1900 մէթր է և Աղրի Տաղի լեռները որուն գլխաւոր կատարն է Գարագայա (1750 մէթր) (Քէմալէսսին էջ 13)։

Արգէոսի արեւմտեան կողմը բաւական հեռու, Արգէոսի ջուրերէն գոյացած ջրային աւազանը կ'եզերեն Սուվէրմէզ Տաղ և Սիվրի կամ Թէքքէ Տաղ կոչուած լեռներու զանգուածները։

Արգէոսի արեւմտեան կողմը տարածուած դաշտին մէջ ջուրերը պեղած են նեղ ձորերու և փոսերուն միջև շատ մը բրգաձև զանգուածներ։

Մեծ մասամբ հրաբխային հողին վրայ դիզուած այս զանգուածները ջուրերու ազդեցութեամբ, սպունգաքարերու մաշուելէն առաջ եկած են։

Շատ զարմանալի և գեղեցիկ տեսարան մը պարզող այս զանգուածներու տարածութիւնը 30–40 մէթրի կը հասնի։ (Քէմալէսսին էջ 9)։

Արգէոս և Հասան Տաղ լեռներուն միջև գտնուած դաշտը, ճերմակ փխրուն տուֆ քարերու և սպունգ քարերու զանգուածներով լեցուն են, որոնք խոր ձորեր կը կազմեն, և որոնք տոլէն կը կոչուին։

Այս ձորերուն մէջ այգիներ, պարտէզներ և բանջարանոցներ կան։

Բոլոր այս ըսուածներէն որոշ կը տեսնուի թէ Կապադովկիա ո՛չ միայն լեռնադաշտ մըն է որ հարթ մակերեւոյթ մը չի ներկայացներ, այլ իր վրայ ալ ունի ցցուածքներ և խորտուբորտութիւններ։

«Արգէոսէն մինչեւ Հասան Տաղ կը տարածուին շարք մը ստորակարգեալ հրաբխային կոներ, լեռներ եւ ճղքաներ, որոնք երկրին լեռնոտ տեսք մը կ'ընծայեն՝ երկայն տարածութեան մը մէջ՝ դէպի հարաւ մինչեւ Տաւրոսի ոտքը, դէպի հիւսիս մինչեւ Ալիսի նեղ անցքը»: (Ջիմմէրէր):

Անատոլուի թերակղզիին կեդրոնը բոլոր այս լեռները, որոնք Տաւրոսներէն մինչև Հասան Տաղ կ'երկարին ամէնքն ալ հին հրաբուխներ են և երկրաբանական միեւնոյն դրութեան ենթակայ։

Ասոնք կը ներկայացնեն մօտաւորապէս 33 քիլոմէթր լայնութեամբ զանգուած մը։ (Քէմալէսսին էջ 118)։

Կապադովկիոյ նահանգին արեւելեան մասը աւելի զանազանութիւններ ունի կտրուած ըլլալով յոյներու կողմէ Անտիտաւրոս կոչուած լեռներու շղթայով, որոնց մէկ մասը նկատուած է, կարգ մը աշխարհագէտներէն, նաև Արգէոս։ (տես. Ալիշան Աշխարհագրութիւն էջ 511):

Անտիտաւրոսի և Տաւրոսի հարաւային շղթային միջև կը գտնուի, հին ժամանակները Կատաւոնիա (Cataonia) կոչուած երկիրը, ներկայացնելով լեռներով շրջապատուած բարձր դաշտ մը։ (Բրիտանական Համայնագիտարան):

Միայն գաւառին արեւմտեան մասերը որոնք սահմանակից են Լիկաւոնիայի (Դոնիա), մինչև Տաւրոսի ստորոտը տարածուող բայց առանց ծառի դաշտեր են, որոնք արօտավայր կը ծառայեն ներկայիս, ինչպէս անցեալին մէջ, բազմա՛թիւ ոչխարի հօտերու, բայց գրեթէ ամբողջութեամբ ամայի են։

Արգէոս լեռը և իրեն ենթակայ կատարները որոնք լեռնաշար-



քեր կը կազմեն, ունէին իրենց կողերուն վրայ երբեմն ընդարձակ անտառներ եղեւիններու և կաղնիներու, որոնք կը ծածկէին այն ատեն, բոլոր հիւսիսային մասը։

Ստրաբոն որ կ'ապրէր Քրիստոսի Ա. դարուն առաջին քառորդին մէջ կը հաստատէ թէ բոլոր այս լեռները անտառներով ծածկուած էին, մինչ այսօր լերկ ու մերկ են անոնք։

Այս անտառները աւերուած չեն բուսային հողի պակասին հետեւանօք այլ աւելի խնամքին չգոյութեան և բնակիչներուն անփութութեան և անհոգութեան պատճառով։

Այնպէս որ երկիրը կը ներկայացնէ դժբախտ լերկութեան պատկեր մը, քարուտ հողով՝ քիչ յարմար մշակութեան, քիչ կամ գէշ ոռոգուած։

## Դ.

## ՋՐԱԳՐՈՒԹԻՒՆ

Հակառակ անոր որ Կեսարիոյ գաւառը լեռնոտ է, ջրագրութեան տեսակէտով նպաստաւորուած չէ։

Կեսարիոյ շրջակայքը կը ջրուին Ալիս գետին օժանդակներով կամ ճիւղերով։

Թէոտոր Ռայնախ Կապադովկիոյ վրայ խօսելով կ'ըսէ թէ, «Կեդրոնական գրեթէ հարթ լեռնադաշտը բացի իր եզերքներէն, գէշ ոռոգուած է: Իր գետերէն շատերն այնչափ տկար են որ ծով հասնիլ չեն կրնար եւ կը թափին լիճեր կամ ճահիճներ. ուրիշներն կ'իյնան Ալիս գետին մէջ, որ թերակղզիին ամենամեծ՝ բայց նաեւ ամենէն աւելի ամայի եւ անօգուտ գետն է: Ո՛չ ձկնորսութիւն եւ ո՛չ նաւարկութիւն կը կենդանացնեն իր աղի կոհակները եւ իր սեպ ափունքը, սահմանի երկար փոս մըն է, որ երբեք չի կրնար ծառայել իբրեւ միութեան կապ մը:» (Միհրդատ Եւպատորի վրայ ուսումնասիրութիւն):

Ալիս կը ճեղքէ մէկ ծայրէն միւսը, արեւելքէն արեւմուտք, 90 քիլոմէթր ուղի մը, իր հիւսիսային սահմանէն 20 քիլոմէթր միջին հեռաւորութեամբ մը։

Գօրամազ լեռնէն բխող Սարըմսագլը կամ Գարա-Սու (ըստ Նախնեաց Մելաս(1)= Սև ջուր) գետը Ալիսի կամ Գըզըլ Ըրմաքի օժանդակ ջուրերուն ամենէն կարեւորներէն մին է, որ իր կարգին իրեն օժանդակ ունի Տէլի-Սու կոչուած գետ մը, որ Կեսարիոյ արեւմտակողմը, 13 քիլոմէթր հեռու Սազլըգ կամ Սուլթան-Սազը կոչուած լիճէն անցնելով, Պօղազ քէօփրիւսիւի մօտ կը միանայ Սարըմսագլը գետակին, և իր ճամբուն վրայ դարձնելով շատ մը ջաղացքներ, Թէք Կէօզիւ կամուրջին մօտ կը թափի Ալիս գետը՝ որ Կեսարիայէն 95 քիլոմէթր հեռուէն կ'անցնի։

Սարըմսագլը կամ Գարա-Սու նախ կը թափի դէպի արեւմուտք, յետոյ կը բարձրանայ դէպի հիւսիս թափելու համար Ալիսի մէջ։

Ալիսէն և Կեսարիոյ լեռներէն բխող իր օժանդակ Գարա-Սուէն կտրուած հողամասերուն միջև արգաւանդ ձորեր և պարարտ դաշտեր կը գտնուին։ (Arthur Guy)։

---

(1) Մելաս երկու հատ կայ փոքր Ասիոյ մէջ։ Միւս Մելասը՝ Մալաթիայէն անցնելով կը թափի Եփրատ։

Կեսարիոյ դաշտը մասամբ կ'ոռոգէ Նաև Անի-չայ կոչուած գետակը որ Ալիսի մէկ նիհար ճիւղն է։

Իսկ Կեսարիոյ լեռնային գիւղերը կը թրջեն այն անհամար առուակները որ Արգէոսի կողերէն վար կը սողոսկին կ'իջնեն։

Էվէրէկ իր պտուղը կը յագեցնէ իր նշանաւոր Խլպիսով, Գոչփունարով, Պապաեանիով եւ Ս. Գրիգորով, քառեակ ակեր, որոնք անծանօթ ստորերկրեայ ճամբաներէ գալով Էվէրէկի չորս անկիւններէն դուրս կը ժայթքեն ուղխօրէն, երթալ անհետանալու համար չես գիտեր ուր։

Մանաւորապէս Արգէոսէն և Ալի Տաղէն իջնող պզտիկ գետակները, որոնք գարնան իրենց ճամբուն վրայ գտնուող քարն ու հողը քշելով արագօրէն կը վազեն դէպի դաշտերը, ամառը կը ցամքին։

Ինչպէս Արգէոս և իր շուրջին կատարները ժողովուրդին մէջ ծնունդ տուած են աւանդավէպերու և զրոյցներու, անկէ բխող գետակներուն շուրջն ալ ստեղծուած են առասպելներ կամ զրոյցներ, որոնցմէ մէկուն արձագանգ եղած է Վահան Թէքէեան, գրի առնելով սա աւանդութիւնը։

«Էրճիասի բլուրներէն մէկուն տակէն գետակ մը կ'անցնի: Տեղ մը, այդ գետակին եզերքը, անմատչելի սեպ ժայռեր կան, եւ այդ ժայռերուն մէջ հին ժամանակներէ ի վեր միլիոնաւոր մեղուներ իրենց փեթակները շինած են: Երբ, ամառուան մէջ, արեւը կը զարնէ ժայռերուն ու կրակի պէս կը տաքցնէ զանոնք, փեթակներուն մեղրը կը հալի եւ կը հոսի վարէն անցնող գետակին մէջ՝ որուն ջուրը, մինչեւ իսկ երբ բաւական վար կ'իջնէ ու կը վազէ հեռաւոր գիւղի մը քովէն՝ դեռ կը պահէ այդ մեղրին քաղցրութիւնը,...: Կ'ըսեն թէ՝ զանազան անգամներ Կեսարիայէն այդ կողմերը գացած եւ փորձած են յումպէտս հասնիլ հեղուկ գանձը հաւաքել: Սակայն քարաժայռերը, բարձր ու սեպ, թոյլ տուած չեն որ բռնաբարուի իրենց ծոցին մէջ հաստատուած մեղուներու քաղաքը եւ բոլոր անոնք որ ծախքեր ըրած ու հոն գացած են՝ միշտ ձեռնունայն վերադարձած են...:

Ես կը հաւատամ այս պատմութեան՝ քանի որ կան կեսարացիներ որ անոր հաւատալով դրամ ծախսած են — ինչ որ կեսարացի մը պիտի չընէր՝ եթէ կանխաւ ստուգած չըլլար իրողութիւնը: Բայց ուրիշ պատճառով մըն ալ ես կը հաւատամ այս պատմութեան,— եթէ այս կարծր ու չոր բնութեան մէջ յառաջ եկած են երբեմն բանաստեղծներ ու արուեստագէտներ, ես հիմա գիտեմ թէ անոնք մեղուանոցի այդ ժայռերուն տակէն անցնող մեղրախառն ջուրով սնած են:» (Ժողովուրդի Ձայն - Ժամանակ թիւ 133 - 4129):

Ալիսի և Ներքին աւազանին հարկատու գետերէն զատ ուղղակի ծով թափող միակ գետն է Ջամանըր գետը, ինչպէս տեղացիք կը կոչեն։ Անիկա Տամնդաւն է պատմական, որ Կեսարիոյ գաւառին աղքատ բուսականութիւնը ոռոգող ջուրերուն մէջ առաջինն է կարեւորութեան տեսակէտով, վասնզի ան է որ կը շէնցնէ և կ'արդիւնաւորէ Կէօստէրէի տափաստանը, այսինքն այն դաշտագետինը որ կը տարածուի Թոմարզայէն մինչեւ Տուրոսեան լեռնաշղթային ստորոտները և որ Կեսարիոյ գաւառին գրեթէ միակ բարեբեր հողամասն է։

Գալով լիճերուն նշանակելի է որ հակառակ երկրին հրաբխային հանգամանքին, մեծ խորութիւն մը չունին և աւելին ճահիճներ են քան թէ լիճեր։



Մանաւորապէս Արգէոսի արեւմտեան ստորոտներէն երկարող Սազ-Կէօլին խորութիւնը շատ քիչ է։

Անձրեւային եղանակին և գարնան քիչ մը բարձրացող այս լիճը ամառը սոսկ ճահիճի մը վիճակը կ'ստանայ։

Իրմէն քաղուած միակ օգուտը, իր մէջը հասնող «պէրտի» կոչուած մեծ կնիւնները (սազ) և եղէգներն են, որոնք հնձուելով կը չորցուին և փուռերու և բաղնիքներու մէջ իբր վառելանիւթ կը գործածուին։

Ասկէ զատ այդ կնիւնները կը ծառայեն իբր անասնոց կեր և կը գործածուին բազմոցներ, անկողիններ և բարձեր շինելու։

Կեսարիոյ հիւսիսային-արեւելեան կողմը 15 քիլոմէթր հեռուն Էֆքէրէ և Մանճուսուն գիւղերուն առջև կը գտնուի Էնկէր Կէօլի կոչուած լճակը որուն նմաններ շատ կան աստ անդ։ (Թէմալէտտին, էջ 13 և 101)։

Այս լիճերը կը գոյանան առհասարակ շրջակայ լեռներու և ձորերու վազուն ջուրերուն և անձրեւէ կազմուած հեղեղներուն հաւաքումէն և երբեմն կ'օգտագործուին։

Այս Էնկէր Կէօլին ջուրերը կը ծառայեն ոռոգելու Տատասըն գիւղին արտերը, ագուգաններու միջոցաւ փոխադրուելով։

Նոյնպէս այս լիճերուն մէջ գոյացած կնիւնները հնձուելով կ'օգտագործեն իբր վառելանիւթ։

Սուլթան և Ճրպիք ճահիճները, որոնք կը գտնուին Ինճէսու, Գարահիսար Տէվէլու գաւառներուն միջև, գոյացած են ակերէ բխող ջուրերէ և անձրեւներու արդիւնք հեղեղներէ։

Ասոնց ալ շուրջը ծնունդ առած բուսականութիւնը կ'օգտագործուի։

## Ե.

## ԲՈՒՍԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Կապադովկիա, մանաւորապէս Կեսարիոյ շրջանը՝ քարոտ երկիր մըն է։ Լեռները աւելի քարաժայռերու կոյտեր են՝ աննշան բացառութիւններով, իսկ ընդարձակ դաշտագետինները՝ յաճախ խիճերու անապատներ։ Այս իսկ պատճառով, և մանաւանդ տիրող կառավարութենէն ենթարկուած լքումին հետեւանօք՝ այս հողամասը խիստ աղքատ արդիւնաբերութիւն ունի բուսականութեան տեսակէտով։

Երկրագործութիւնը հազիւ թէ գոյութիւն ունի։ Եւ այն տեղերը միայն, զորս բնութիւնը մասամբ խնայած է ժայռերու տիրապետութենէն և հրաբխային նիւթերու խուժումէն։

Պէտք է ըսել թէ Արգէոսը հրաբուխ մըն էր ատենօք։ Անոր յաճախակի բռնկումներուն աւանդութիւնը կը հաստատուի լաւայի քարացած մնացորդներէն որ տեղ տեղ բլուրներ ձեւացուցած են։

Եւ սակայն տեղւոյն բնակչութիւնը դարերու ընթացքին չայլուած անհատական ճիգերու գինով տեղ տեղ առաջ բերած է ճշմարիտ ովասիսներ, այնպէս որ եթէ կեսարացին չէ կրցած զարգացնել երկրագործութիւնը, որ կը պահանջէ համեմատաբար փափուկ և ողորկ գետին, գէթ առաջ բերած է անհատնում այգիներ և պտղատու ծառերու պուրակներ։

Ասոր համար է թերեւս որ Ջիմմերէր կ'ըսէ թէ չափազանց խիստ է այն դատաստանը թէ գետնի վրխտ հողը ո՛չ անտառի և ո՛չ ցորենի մշակութեան կը յարմարի։ Ինքը արօրը շարժման մէջ տեսած էր Նիկտէէն մինչև Էնկիւրի և Կեսարիա և անկէ ալ մինչև Գոնիա, և Կապադովկիան խոռոչաշատ երկրին փխրային (tuf) հողերը՝ զարդարուած որթատունկով, հիւթալի առուոյտով և անթիւ պտղատու ծառերով։ (ՀԱ. 1900 էջ 21)։

Սակայն իր ծովու մակերեւոյթէն ունեցած բարձրութիւնը և իր կլիմային ցրտութիւնը պատճառ եղած է որ ո՛չ մէկ ատեն այս երկիրը հարուստ և բարեբեր երկիր մը նկատուի։ (Բրիտանական Համայնագիտարան):

Իր հաստարմատ ընկուզենիները, որոնք առատ են մանաւանդ Էվէրէկի կողմերը, պարզապէս պատկառանք կ'ազդեն դիտողին։ Իսկ ծիրանը, տանձը, խնձորը, և խաղողը իրենց ամէնէն ճոխ տեսակներովը՝ ամէն կողմ կարելի է գտնել՝ և առատօրէն։

Մասնաւորապէս իր խաղողներուն համար ըսուած է թէ Փոքր Ասիոյ լաւագոյններն են։

Քէմալէտտինի գործին մէջ առանց անունները տալու ըսուած է թէ Կեսարիոյ այգիներուն մէջ կը հասնին 30էն աւելի խաղողի տեսակներ։

Թէոդիկ իր Ամենուն Տարեցոյցին մէջ (1926 էջ 95) կը յիշատակէ Կեսարիոյ շրջանին մէջ հասած խաղողի բազմաթիւ տեսակներ որոնց վրայ հազիւ կրցանք հետաքրքիր կեսարացիներէ մէկ երկու տեսակներ աւելցնել։

Արդ այդ տեսակներն են.

1. Տիլմիթ կամ Տիմրիթ որ Էվէրէկ-Ֆէնէսէցիք կը կոչեն Տիրմիտ կամ Աղտիրմիտ (ճերմակ Տիրմիտ)։
2. Պուլուտը որ Էվէրէկ-Ֆէնէսէի շրջանին մէջ Պուլուտ-իւզիւմիւ ձեւով կը ճանչնան։
3. Բազգը որ նոյնն է նաև Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ։
4. Գարա-պուրնը կամ ըստ Էվէրէկ-Ֆէնէսէցւոց Գարա պուրնի:
5. Քէչի-մէմէսի որ նոյնպէս կը կոչուի հայախօս շրջաններու, այսինքն Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ։
6. Չէվէնկ որ «ճերմակ» կամ «սև» ածականները կցելով, ունին նաև Էվէրէկ-Ֆէնէսէցիք։
7. Բէօրքլէճ
8. Քէհրիպար
9. Էլտաշ
10. Սունկուրլու
11. Գարալըգ
12. Կիւլ-իւզիւմի
13. Փարմագ-ունու
14. Չավուշ
15. Պէսի
16. Իրէնճ
17. Նիւրիւկեար
18. Կէօվնէճ
19. Շիրէտար

(7–19:) Այս տեսակները չկան Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ։



20. Բէչէլ-օռնա
21. Չամչինոց
22. Հաար իւզիւմի
23. Տէվէ կէօզիւ
24. Կէլին-եանաղը

(20–24:) Միայն Էվէրէկ-Ֆէնէսէցիներու յատուկ և Կեսարացւոց անծանօթ։

Կեսարիոյ և իր շրջակայքը կը հասնի նաև առանձնայատուկ պտուղ մը զոր հայախօսները կ'անուանեն կլապուլա(1), նաև ռան թուք(2) կոչուած տեսակ մը թութ որ թուփերուն վրայ կը բուսնի։

Նոյնպէս կը հասնի սեխ և ձմերուկ։

Մասնաւորապէս համբաւաւոր է Անպար(3) կոչուած վայրը՝ իր սեխերով։

Այս պտուղներուն անհաւատալի աժանութիւնը որ մասնաւորապէս Կեսարիոյ յատուկ էր, կարելի է բացատրել անով որ գրեթէ ամէն ընտանիք ունէր իր այգեստանը։ Անկէ զատ Կեսարիա մինչև վերջերը հեռու մնացած ըլլալով երկաթուղիի գիծերէն, զրկուած էր իր պտուղները արտածելու միջոցներէն։

Բնական արտադրութիւններու կարգին շահաբերութեան տեսակէտով, առաջին տեղը կը բռնէին ատենօք ճէհրին և ճիքրէն (գազ)։

Մինչև կէս դար առաջ գաւառին գրեթէ ամէն անմշակ բլուրները առաջինը արտադրող ծառեր կը վխտային։ Բազմաթիւ ընտանիքներ, նոյնիսկ գիւղական ամբողջ համայնքներ անոր վաճառումով կ'ապահովէին լիառատ ապրուստ, վասնզի եղած են ժամանակներ, երբ վեց օխան մինչև մէկ ոսկիի ծախուած է։ Եւ սակայն եւրոպական ճարտարարուեստը վերջերս գունատու տարբեր նիւթեր գործածութեան դնելով, Կեսարիոյ շրջանակին ապրուստի այս կարեւոր ազդակը միանգամընդմիշտ ջնջած է։

Այսօր գրեթէ ոչ մէկ հետք կ'երեւի ճէհրիի ընդարձակ պուրակներէն։ Իբր ձրի վառելանիւթ գործածուելով քանի մը տասնեակ տարիներու մէջ աւլուած են անոնք։

Գալով ճիքրէին ասիկա կ'արտադրուի հայախօսներէն գազ կոչուած տատասկէ մը, որ խիստ առատօրէն կ'աճի Արգէոսի և անոր կողերն ի վեր բարձրացած լեռներուն վրայ։

Թէև տակաւին առեւտրական հրապարակի վրայ խնդրանքի առարկայ ըլլալ կը շարունակէ, և սակայն այնքան ինկած արժէքով որ, ապրուստի ուրիշ ամէն միջոցէ զուրկ մնացած ընտանիքներ միայն կը զիջանին պարապիլ անոր հայթայթման գործով։

Ժամանակին կարեւոր քանակով կ'արտածուէր նաև ծիրանի կուտ, բայց ոչ բուն ծիրանի (= Թրք. գայրար) որուն կուտը անոյշ կ'ըլլայ, այլ անոր ընտանիքին պատկանող պարկուկ կամ խուլթիկ (Թրք. գէր-տալի) կոչուած տեսակին, որուն կուտը լեղի կ'ըլլայ։

Կեսարիոյ արտադրութեանց մէջ կարեւոր տեղ կը բռնեն ըստ Քէ-

---

(1) Թրքախօսները կ'ըսեն կիլապուլու, իսկ Էվէրէկցիք կը կոչեն կրպալա։

(2) Մորենի կամ Թուրքերու մոռ մենի կոչած պտուղն է։

(3) Անպար կը գտնուի Գարա Սուի եզերք, Կեսարիոյ արեւմտեան կողմը լիճի մը և ճահիճի մը եզերքը։

մալէտտինի (էջ 14) նաև ճակընդեղ, բալթամէսը և բակլայ։

Կեսարիոյ շուրջը հասնող բանջարին հատը երբեմն 7–8 օխա կը կշռէ։

Նոյնպէս Կեսարիոյ մէջ կը մշակուէր վուշ և կտաւատ (graine de lin = Քէթէն թօխումու կամ Zehrek) որոնք կը կազմէին արտածութեան նիւթեր։

Իսկ Կեսարիոյ մէջ հասած առուոյտը (եօնճա) աշխարհի լաւագոյն տեսակն է ըստ գերման գիտուններու կատարած մասնաւոր փորձարկութեան։ Այս պատճառով Թուրքիոյ Հանրապետութիւնը վերջերս անոր մշակութեան մեծ ոյժ կուտայ, իբր արտածութեան նիւթ մը։ (Քէմալէտտինի, էջ 15)։

Կեսարիոյ կուսակալութեան ամէնէն բարեբեր և ամէնէն անտառախիտ վայրը՝ Բունար Պաշիի գաւառն է, որուն անտառներուն տարածութիւնը 32.000 քառակուսի մեթր է։ (Քէմալէտտինի, էջ 14–15)։

Կապադովկիա թէպէտև աղքատ երկիր մը նկատուած է բուսականութեան տեսակէտով, սակայն ծաղիկներու և ծառերու այլազան տեսակներ ունի։

Է. Շանթր (E· Chantre) որ Կապադովկիան ուսումնասիրող գիտուններէն մէկն է, կը հաւաստէ թէ այս երկրին մէջ 2000 տեսակ բոյսեր գտած է, ինչ որ արհամարհելի թիւ մը չէ։

## Զ.

## ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Կենդանական հարստութեան, մանաւանդ ընտանի անասուններու ճոխութեան, թելադիր պատճառ կրնար ըլլալ միայն արօտատեղիներու առատութիւնը, ինչ որ Կեսարիոյ շրջանակին մէջ կը պակսի։

Հետևաբար անասնաբուծութիւնն ալ յետամնաց է այնքան որքան չէ գուցէ Անատոլուի ուրիշ ոեւէ մասին մէջ։

Կեսարիոյ շուրջը կարելի չէ հանդիպիլ ագարակներու, որոնք հարուստ գոմեր ունենան։

Մէկ կամ հազիւ երբեմն քանի մը կաթնտու կենդանիներ կը պահեն ընտանիքներ, իրենց կաթնեղէնի առտնին պէտք գոհացնելու համար։

Հնութենէն մեզի հասած աւանդութեանց և պատմական տուեալներու վրայ հիմնուած, կարելի է ըսել թէ ստոյգ է որ հին ատեն նշանաւոր էին Կապադովկիոյ ձիերը, ինչպէս նաև իր ոչխարի ստուար հօտերը (Երիս. Համայնագիտ.), և շատ հին ժամանակներէ սկսեալ կապադովկիացիք ստիպուած էին ձիաբուծութեամբ և ոչխարաբուծութեամբ ապրիլ։ (Զիմմերէր, ՀԱ. 1900 էջ 21)։

Մասնաւորապէս Լիկաւոնիոյ սահմանակից դաշտավայրերը այս տեսակէտով շատ նշանաւոր էին։

Վալերիանոս կայսեր (253-260) ժամանակակից Պամպալոս (Pampalus) կամ Պալմատիոս (ըստ այլոց Պամպիտոս կամ Պամպատ) անուն մեծատունը որ կը բնակէր Անտաւալիս կամ Անտաւիլիս կոչուած վայրը(1), կը պարծենար թէ աւելի շատ ձիեր ունէր քան Հռոմի կայսրը (Ալիշան, Սիսուան, էջ 171)։



Երկրին անկեալ վիճակը դարերու ընթացքին մեծապէս փասած է անասնապահութեան որ չունի հիմա այդ հին ժամանակներու ճոխութիւնը։

Հիմա մասնաւորապէս Բունար Պաշի գաղային մէջ է որ կը պահուին իբր գրաստ գործածելի ընտիր ձիերու տեսակ մը՝ Ուզուն Եայլայի անունով կոչուած։

Զիմմերէր (ՀԱ. 1900 էջ 21) իբր ականատես կը հաստատէ թէ ոչ նուազ լաւ կը բուծանուին Կապադովկիոյ մէջ նաև արջառ, էշ և ուղտ։

Իբր փոխադրութեան միջոց մասնաւորապէս կը գործածուին էշերը, որոնց թիւը մեծ է։

Անկէ զատ Կեսարիոյ ընդարձակ դաշտերուն վրայ կը բուծուին ոչխարներու և այծերու հօտեր։ Ասոնց թէ բուրդէն, թէ կաթէն և թէ միսէն մեծ օգուտ կը քաղուի։

Կեսարիոյ արտածութեան նիւթերէն մէկը կը կազմէ բուրդը, որ կ՚ստացուի իր հօտերէն։

Նոյնպէս Կեսարիոյ հարստութեան աղբիւրներէն մէկը կը կազմէ մորթի առևտուրը և տեղական պատրաստութեամբ կաշին։

Բորդագործութիւնն ալ իր զարգացումը կը պարտի բուրդի առատութեան։

## Է.

## ՀԱՆՔԱՅԻՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ

Այս հրաբխային երկիրը շատ բնականաբար պէտք էր ունենար հանքային նիւթեր, դուրս ժայթքած երկրին խորերէն։

Ամէն կողմ առատօրէն կ՚երևան սև լաւայի ահագին զանգուածներ որոնք կանոնաւոր պրիսմակային ձևաւորում չեն ստացած այլ այլազան ձևերով կը ներկայանան։

Առատութեամբ կը գտնուի սպնգաքարը կամ չէչաքարը (սիւնկէր թաշը, փումզա ponce), սակայն շինութեան քարի համար ամէնէն աւելի փնտռուած հորերը անոնք են որոնցմէ ձեռք կը բերուի ճերմակ քար մը, եօնտ կոչուած, տեսակ մը դիւրատաշ քար, աւելի կամ նուազ փխրուն։ Այս քարէն կը շինուին Կեսարիոյ տուները։

Անիկա կրաքարի տեսակ մըն է, շինութեան յարմարող, կռանելի, Պոլսոյ Մալթայ թաշէն սա տարբերութեամբ որ Կեսարիոյ քարը աւելի տոկուն, ձիւնի պէս ճերմակ է և շէնքին կ՚ընծայէ զմայլելի երևոյթ մը։

Այս քարով շինուած տուները դուրսէն ծեփի պէտք չեն ունենար, և երբ հարուստներն են որ կը շինեն շէնքը, զոյգ կը գործածեն եօնտ, որուն ամէն մէկ կտորը ունի մօտաւորապէս 60 ս. մ. երկարութիւն 30 ս. մ. լայնութիւն և 10 ս. մ. հաստութիւն։

---

(1) Հիմա Անտաւալ՝ և մասնաւորապէս Եսկի Անտաւալ Տիանայէ 12 մղոն հեռու և Նիկտէի հիւսիսային կողմը։

կակուղ տեսակը խոնաւութենէն կ'ազդուի և քանի մը տասնեակ տարիներ վերջը խաւ խաւ կը փրթի։ Ասով հանդերձ ասիկա արգելք մը չէ համարուած գործածելու համար զայն բաւական բարձր շէնքեր շինելու։

Կեսարացիք այս քարը կը նախընտրեն անոր համար որ դիւրին և քիչ ծախքով կարելի է աշխատիլ անով։

Այս քարը իր գունաւորներով և տեսակներով Ե. Երկաթեան (տես. Բիւզանդիոն 1900 օգոստ. 2) թ. 1166) կը կարծէր թէ օր մը պիտի ըլլար չահարեր, մարմարինէն եւքը վայելուչ նիւթը ըլլալով շէնքերու ճակատը (façade) զարդարելու, եթէ շատ հեռաւոր տեղ փոխադրելու միջոցները ընծայուէին։

Ուրիշ տեսակ քարեր, հրային կամ աւազաքար, սեւորակ և երբեմն ծակոտկէն, խոնաւութենէ, թթուէ չազդուող, դժուարակոփ, կը գործածուին շէնքերու վարի մասերուն։ (Ե. Երկաթեան. Բիւզանդիոն. մ. 1166)։

Նոյնպէս առատօրէն կը գտնուի Կեսարիոյ շուրջը ծիրանաքարը (սումագի մէրմէր = porphyre) սակայն շատ քիչ կը գործածուի վասնզի խիստ կարծր է և դժուար կ'աշխատուի իր վրայ։

Կեսարիոյ շուրջը կը գտնուի նաև կաւիճ (բէյլէրիր) մասնաւորապէս Գըզըլ Ըրմագի եզերքը։

Ալապաստր և կրանիտ նաև կան այս շրջանին մէջ։

Գաճը (ալճր) մեծ առատութեամբ մասնաւորապէս կը հանուի Կեսարիոյ ենթակայ Ազըրնաս գիւղէն։

Իսկ Կեսարիոյ քիչ մը հողն որ կը ծածկէ գետինը՝ աւազ ու կաւ, աղտաղտին զոր Թուրք աղտաղտագործներ(1) (=Զօրագճր) զտելով կը հանեն բորակ կամ ազբորակ (կիւճէրչէլէ) ի հաշիւ կառավարութեան։

Բունար պաշը Գազայի կողմերը Լիճիսի և արծաթախառն կապարի հանքեր կան։

Կեսարիոյ քովը՝ դէպի Տաւրոսեան լեռներու ստորոտը Ֆարասա կամ Ֆարաշա երբեմն յունական գիւղին մօտ, շատ հին ժամանակներէ սկսեալ մինչև յիսուն տարիներ առաջ, կը շահագործուէին Ֆարաշայի երկաթի հանքերը։ (Միսուաճ էջ 10)։

Կեսարիոյ հին տուներուն պատուհանի երկաթները և դրան կըղպանքները ամբողջ, տեղացի արհեստաւորներու կողմէ, այս երկաթէն շինուած են։

Կեսարիոյ շրջակայքը կան նաև երկաթի հանքեր որոնց ստոյգ տեղերը մինչև վերջերը ճշդուած չէին, բայց դիտուած էր որ ճամբաներու և դաշտերու մէջ բարձրացող փոշիներուն մէջ պտտցուած մագնիսի մը վրայ անմիջապէս կը հաւաքուէր երկաթի բաղադրութիւններու շատ նուրբ խաւ մը, ինչ որ ցոյց կուտար թէ հողը կը պարունակէր երկաթ (V. Cuinet. tome I. էջ 314)։ Պունեանի շրջանակի մէջ կայ հանքածուխի հարուստ երակ մը, ինչպէս նաև Բալասի կողմը։

Արգէոսի շուրջը Պուրշանի մէջ հանքեր գտնուիլը Sartiaux կը յիշէ, իր Les civilisations anciennes de l'Asie Mineure գործին մէջ։

Հանքային ջուրերն ալ առատ են Արգէոսի շուրջը։ Քաղաքէն վեց ժամ հեռու ճախճախուտ վայրերու մէջ Հասան Ալպ կամ Հասանարփա գիւղին մօտը ակէ մը կը ժայթքէ հանքային պաղ ջուրեր որոնք կը պարունակեն Fառպոնաs ցը սուs, որով մորթի և ստամոքսի հիւանդութեանց օգտակար են և մարսողութեան կը նպաստեն։ (Քէմալէտտին էջ 101)։

Կեսարիոյ արեւմտեան կողմը գտնուող ճահճային Սազըլըք լիճին շուրջը և մէջը կան շատ մը ակեր, որոնցմէ ժայթքող ջուրը 30–40 քիլօմէթր վայր մը կը ծածկէ։ Այս լիճին շուրջը կան անոյշ ջուրի և հանքային ջուրի ակեր։ Հանքային ջուրեր արտադրող ակերէն ոմանք լիճին մէջը ըլլալով անմերձենալի են, իսկ լիճին եզերքը կայ ակ մը որ կը կոչուի Սազ իչմէսի։ Այս պաղ հանքային ջուրին մէջ մեծ քանակութեամբ մաքնէզի կայ (Նոյն էջ 100) և ունի լուծողական յատկութիւն։

Կեսարիոյ մօտերը Գըզըլ Ըրմաք գետին վրայ ձգուած Թէկ Կէօզ կամուրջին քովը կայ տաք հանքային ջուրերու ակ մը Ըլըճա Համամ կոչուած որուն ջուրին տաքութեան աստիճանը 16° է և կը պարունակէ երկաթ։ Հոն կառուցուած են երկու բաղնիքներ մէկը կիներու և միւսը այրերու յատուկ։ (Քէմալէտտին էջ 101)։

Այս բաղնիքէն բաւական հեռու Ֆէհիպլիի և Քօզաքլիի միջեւ կայ ջերմուկ մը եւս, որ երկու աւազան ունի, մէկը՝ սաստիկ տաք ուր անկարելի է լուացուիլ, միւսը՝ չափաւորապէս տաք, ուր կարելի է մտնել լոգանք առնելու համար։

Այս շրջանակին մէջ կան ուրիշ հանքային ջուրերու ակեր ալ։

Կեսարիա իր կերակուրի աղին պէտքը կը հոգայ, աղահանքերէն, որոնք կը գտնուին իր մօտերը, ինչպէս նաև Բալաս գիւղի մօտ գտնուած Թուզլու կամ Բալաս կէօլ կոչուած լիճէն ելած աղով։ (Քէմալէտտին էջ 100)։

Վ. Թէքէեան իր դէպի Կեսարիա ճամբորդութեան ընթացքին կը պատմէ թէ դաշտին մէջտեղը արեւին տակ, դունչերնին գետինը դրած ոչխարի անչարժ հօտեր տեսած է։ Խոտ չի կար որ ճարակէին, ուստի կը հետաքրքրուի և իրեն կը բացատրուի թէ հողը աղի է այդտեղ և ոչխարները աղ կը լզեն իրենց այդ անշարժ դիրքին մէջ։

Ասիկա ցոյց կուտայ թէ աղը բնութիւնը առատօրէն տրամադրած է հոն։

Հանքաբանական տեսակէտով Կապադովկիոյ մէջ 350ի չափ քարեր և բրածոներ գտնուած են։ (Քէմալէտտին էջ 16)։

## Ը.

## ԿԼԻՄԱՅ

Կեսարիա ծովին մակերեսէն 1195 մեթր բարձր է, այնպէս որ կեդրոնական Փոքր Ասիոյ բարձրաւանդակին կլիմայական բոլոր խասութեանց ենթակայ է։

Ձմեռը խիստ և սաստիկ կ'ըլլայ, իսկ ամառը չափազանց տաք։

Ձմեռը 52.22 աստիճաններուն վրայ գտնուող Ամսթերտամ և ամառը

(1) Ասոնք Կեսարիոյ մէկ մեծ թաղը կը գրաւեն քաղաքին հիւսիսային արեւմտեան եզրը։

44.7 աստիճաններուն վրայ գտնուող Թուլուզ քաղաքներուն հետ
կրնայ բաղդատուիլ։ (Քէմալէտտին էջ 9)։

Կեսարիոյ շրջակայքը ամառը ջերմութիւնը կը բարձրանայ յաճախ
մինչև 35° և ձմեռը կ'իջնայ մինչեւ զէրոյէն վար 10–15°։

Նկատի ունենալով այն հանգամանքը որ իր գետերէն մէկ կարե-
ւոր մասը կը ցամքի և լիճերը ճահիճներու կը վերածուին, երկրին
կլիման հեռու է շատ առողջապահիկ ըլլալէ։

Մասնաւորապէս ճահիճները կը կատարեն այս տեսակէտով չափա-
զանց յոռի դեր մը։

Կեսարիոյ գաւառին կլիման,* ինչպէս բովանդակ Կապադովկիոյ
բացի Պոնտականէն, որ մեղմագոյն կլիմայ ունի (Ստրաբոն Բ. 1.5.
ԺԲ. 2.10) չոր և ցամաքային է և երկու ծայրայեղութեանց մէջ կը
շարժի։

Կարճ խորշակային ամառուան մը կը յաջորդէ երկար խիստ ձմեռ
մը, ուր սառնասառոյց բուքերը արգելքի մը չեն բախիր։

Արգէոսի զառիթափները առհասարակ մինչեւ ապրիլ ծածկուած
են ձիւնով։

Թ.

## ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ

Փոքր Ասիոյ պատմութեան բոլոր շրջանին ամէնէն գլխաւոր
ուղիները կը ձգուէին արեւմուտքէն դէպ ի Կեսարիա-Մաժակ՝ որ յե-
տոյ Գամրաց մայրաքաղաքն եղաւ և անկէ կը ճիւղաւորուէին դէպի
արեւելք և հարաւ։

Սեբաստիա երկրորդ կեդրոն մը կը կազմէր՝ համեմատութեամբ
Կեսարիոյ՝ երկրորդական նշանակութեամբ և արեւելեան Փոքր Ասիոյ
ուղիներու բովանդակ դրութիւնը դիւրաւ կը նկարագրուի և պայծառ
կը հասկցուի եթէ այս երկու քաղաքները առնենք իբրև մեկնակէտ։
(ՀԱ. 1930 էջ 112)։

Այս ուղղութեամբ ունին շատ նշանակելի աշխատութիւններ
Հոգարթ(1), Անտերսըն(2) և Ռամսէյ(3)։

Պարսկաստանը, Աքեմէնեան հարստութեան ժամանակ, երբ դար-
ձաւ համաշխարհային մեծ պետութիւն, բացուեցան նաև մեծ ճանա-
պարհներ զանազան ուղղութիւններով՝ անագին պետութիւնը կառա-
վարելու և անոր հեռաւոր ծայրերը կեդրոնին հետ կապելու համար։

Անոնց գլխաւորն էր «արքունի» կոչուածը, որ կ'անցնէր Կապա-
դովկիայէն ուղղուելու համար դէպի Փոքր Ասիոյ ծովեզերքը, պե-
տութեան ամէնէն վտանգուած մէկ կէտը։

Նոյնքան նշանաւոր են Հռովմէական տիրապետութեան շրջանին
ճանապարհները լեգէոններու երթեւեկին համար։

---

(1) Hogarth, Mod. and arcient roads in East, 1893, Lond. R. G. S. III. 643.

(2) Z. Anderson, the road - system of Eastern Asia Minor with the evidence of Byzantine compaignes. J. of Hell. Stud. 1897, էջ 22։

(3) Ramsey, Historical Geography of Asia Minor.



Անոնց հետքերը դեռ կը մնան տեղ տեղ։

Գլխաւորը անոնց որ կ'ուղղուէր դէպի պարսից սահմանագլուխ
և ունէր ոչ միայն առեւտրական այլ նաև ռազմական խիստ մեծ կա-
րեւորութիւն, կ'անցնէր Կապադովկիայէն։

Հնագոյն անցեալի այդ բարձր դիրքը, իբր քառուղիի մը վրայ
գտնուող երկիր մը, Կապադովկիա չկրցաւ պահել, երբ մանաւանդ
երկաթուղին գործել սկսաւ։

Իր լեռնոտ նկարագիրը արգելք մըն էր իր ճամբաներուն կանո-
նաւորութեան և առատութեան։

Գետային հաղորդակցութեան համար միայն կրնար ծառայել Ալի-
սը, որ «Շնորհիւ ցիրող կառավարութիւններու անփութութեան, ոչ մէկ ծառա-
յութիւն կը մատուցանէ երկրին արդիւնաբերութեան: Կը հոսի ան անտառուկ բնու-
թեան բացած իր ճամբէն, կարծես երջանիկ իր անձեռնմխելիութեան մէջ»:

Հետեւաբար Ալիս իբր հաղորդակցութեան միջոց ոչինչ կ'ընծա-
յէր երկրին, մասնաւորապէս այն պատճառով որ Պոնտական Կապա-
դովկիան լեռնային երկիր մըն էր, և երկրին այդ հանգամանքը ար-
գելք մըն էր Ալիսը օգտագործելու համար իբր հաղորդակցութեան
միջոց։

Միայն երկաթուղին էր որ կրնար այս երկրին վիճակը կերպա-
րանափոխ ընել, ինչ որ դժբախտաբար գոյութիւն չունէր դեռ երէկ,
կատարելու համար իր քաղաքակրթիչ ազդեցութիւնը և զարգացնելու
երկիրը, որ կը մնար նախնական վիճակի մը մէջ։

Հիմա Կեսարիա կապուած է թէ՛ Միջերկրականի, թէ՛ Սև ծովու և
թէ՛ Եգէականի, շնորհիւ նոր շինուած երկաթուղիներուն, որոնց գո-
յութենէն այլեւս դժբախտաբար օգտուելու վիճակին մէջ չէ հայ կե-
սարացին, վասնզի քաղաքը դատարկացած է գրեթէ իր հայ բնակչու-
թենէն, և միայն աննշան խլեակներ մնացած են, երբեմնի կորովի,
գործունեայ և աշխատասէր առեւտրականներու այդ մեծ գաղութէն։

Այսօր Կեսարիա կապուած է 380 քիլոմէթր երկաթուղիով մը էն-
կիւրիի, որ զինքը կրնայ դնել յարաբերութեան, թէ՛ Կ. Պոլսոյ և թէ՛
Իզմիրի հետ։

Անկէ զատ 223 քիլոմէթր երկարութեամբ գիծ մը Սեբաստիոյ և
538 քիլոմէթր երկաթուղի մը Սամսոնի հետ կը կապէ Կեսարիան, որ
200 քիլոմէթրէն աւելի ուրիշ գիծով մը կապուած է Ուլուգըշլայի,
որով կրնայ օգտուիլ Գոնեայի գիծէն։ Այս կերպով Կեսարիա կապ-
ուած է նաև Անատոլուի մայր գիծին որ մինչև Պաղտատ կ'երկարի և
Ուլուգըշլայի միջոցաւ կրնայ յարաբերիլ նաև Մերսինի՝ այսինքն
Միջերկրականի հետ։

Ժ.

## ԵՐԿԻՐԸ ԵՒ ՄԱՐԴԻԿԸ

Իւրաքանչիւր երկիր՝ իր խոր ազդեցութիւնը ունի իր մէջ ապրող
բնակչութեան վրայ։

Ամէն ազգ կրած է ազդեցութիւնը իր ապրած երկրին բնական
նկարագրին, անոր կլիմային և դիրքին, և իր կեանքին վրայ խոր
ներգործութիւն ունեցած են երկրին բնական յարմարութիւնները և
արդիւնաբերութիւնները։

Մէկ խօսքով միջավայրը կազմած է յաճախ ազգերու նկարագիրը և անոր ինքնայատուկ դրոշմ տուած:

Կապադովկիոյ բնակիչներն ալ ընդհանուր օրէնքէն բացառութիւն չէին կրնար կազմել և ազատ մնալ այն բոլոր ազդեցութիւններէն, որ երկրին բնական նկարագիրը, պիտի թողուր անխուսափելիօրէն հոն ապրող ժողովուրդի վրայ, որուն ծագումը և ազգագրականապէս որ ցեղին պատկանելու խնդիրը շատ վիճաբանութեան առարկայ եղած է և դեռ բոլորովին լուծուած հարց մը չէ:

Մասնաւորապէս դժուար է ճշդել Կապադովկիոյ բնակչութեան ծագման հարցը վասնզի արեւմտեան Ասիոյ մէջ ընդհանրապէս և Փոքր Ասիոյ մէջ մասնաւորապէս պատմական շրջաններու, որչափ ծանօթ է, եղած է միշտ բազմազանութիւն ցեղերու և լեզուներու:

Փոքր Ասիոյ մէջ բացի այն լեզուներէն՝ որոնք տակաւին վերջնականապէս չեն լուծուած, միայն խօսելով հնդեւրոպականներու վրայ, Քրիստոսէ Գ. հազարամեակ առաջ՝ երեւան կուգան Լուվեր ու Հաթեր՝ ցեղակիցներով, Հնդիկներ և Արիք, ի Միտանի, Հայաստանի մէկ մասին մէջ, և բնականապէս դէպի արեւելք տարածուած:

Աւելի յետոյ երեւան կուգան և իրենց անունը կուտան այլեւայլ աշխարհներու՝ Թրակեան-Փռիւգեան տոհմեր, Կիմմերացիք կամ Գամիրք, Յոյներ, Գաղատացիք եւայլն:

Թողունք արեւմուտքէն մակեդոնական-յունահռոմէական և արեւելքէն մարապարսկական (չհաշուելով աւելի անազան այլազգի) տիրապետութիւնները և իրենց ազդեցութիւնը:

Այս ազգերու շարքին մէջ երեւան կուգան նաև «Արմէններ»՝ ինչպէս կ'անուանեն զմեզ օտարները — թէև մեր «հայ» անունը շատ հին է, և էապէս անշուշտ նաև «Հայ» ժողովուրդը — չհաշուելով իրանեան եւայլն շրջանը: — Իսկ հարաւակողմը կը զօրանան Սեմականներ, և ասոնց մէջ՝ իբր մեզի դրացի՝ սեմական Արամէացիք:

Թէ արդէն ի՛նչ խառնուրդ ունէին այս բազմաթիւ ազգերն և ինչ նոր տարրեր ընդունեցան, այնպէս պարզ խնդիր մը չէ, և կապուած ուրիշ խնդիրներու շարքի մը հետ որոնք կրնան շատ վէճ վերցնել: (ՀԱ. 1931 էջ 215):

Այնպէս որ այսօրուան տուեալներէն հնագոյն անցեալի մը մասին լուսաբանուիլ կարելի չէ:

Ամէն պարագայի մէջ Կապադովկիացին վերին աստիճանի խառնուրդ ժողովուրդ մըն էր թէ՛ հնագոյն և թէ՛ մերձաւոր անցեալին մէջ, ինչպէս բովանդակ Փոքր Ասիոյ բնակչութիւնը, որուն ցեղային ծագման հարցով զբաղող գիտունները չեն կրցած որոշել տիպար մը ընդհանուր:

Է. Շանդր (E. Chantre, Nouvelles Archives des Miss. Scient. et Litt. Բարիզ, 1897 էջ 329) որ Գօղազքէօյի հաթեան յիշատակարանները ուսումնասիրած է և զբաղած մարդախօսութեամբ, իր կնոջ միջոցաւ, որ իրեն կ'ընկերանար, առած է տեղացի կիներու չափերը: Ան կուգայ սա եզրակացութեան թէ «Փոքր Ասիոյ թուրք ժողովուրդը՝ օսմանցի կոչուած, ինչպէս նաեւ այն որ այս երկրին մէջ յոյն կը կոչուի, բաղկացած են միայն ամենադոյզն մասամբ բուն թուրքերէ եւ բուն յոյներէ: Կորսնցուցած են իրենց նախնական տիպարը: Ունին այն հաւատքն ու լեզուն որ իրենց յատուկ է,



բայց տոգորուած թաթաւած են հայ տարրերէ, պելասգեան, նախակապադովկեան կամ հաթեան հնագոյն ազգերու մնացորդներէն» (ՀԱ. 1900 էջ 22):

Արիստոտ Նէոֆիտ (Aréstote Néophyte, Le district de Kérasunde, L'Antropologie. Բարիզ 1890) աւելի խիստ կը նկարագրէ իր հայրենի Թերակիզիին ժողովուրդներուն իրարու աննմանութիւնները. «բոլոր այս ազգերը որ քովէ քով կ'ապրին, թուրքեր, յոյներ, հայեր, քրդեր, արաբներ եւ այլ, բացարձակապէս ոչինչ ունին հասարակաց: Թէ՛ մարդաբանական տիպարը, թէ՛ լեզուն, կրօնը, բարոյական եւ մտաւոր ընդունակութիւնները, քաղաքակրթեան աստիճանը, կենցաղը, տարազը, ամէն բան՝ մինչեւ անգամ անունը՝ աչքի զարնող կերպով կը տարբերին ու կը զանազանուին»: (տես. ՀԱ. 1900, էջ 22:

Զիմմէրէր, որ յատկապէս Կապադովկիայով զբաղած է, դիտած է որ Նէվշէհիրի քրիստոնեայ բնակչութեան կիները բիրտ ու տգեղ են:

Ասոնք եթէ բաղդատուին իրենց բնակակից կամ բովանդակ երկրին մէջ ապրող ուրիշ բնակիչներուն հետ, պիտի տեսնուի որ միւս բոլորը մարմնոյ կազմութեան կողմանէ գերազանց կ'երեւան: (ՀԱ. 1900 էջ 36):

Զիմմէրէր, կ'ըսէ թէ, գրեթէ ամէն կողմ նեղ պարագաներու տակ ապրող քրիստոնեայ բնակչութեան կիները, որ աշխատութեամբ կանուխ կը պառաւնան, թանձր ու յոյր երեւցան, միայն հայուհիները յաճախ գեղեցիկ տեսք ունին՝ ինչպէս իրենց թուրք դրացիները: (Նոյն):

Ուրեմն, հնագոյն բնակիչները Կապադովկիոյ, հաւանօրէն բիրտ ու տգեղ էին, քանի որ հայերը և թուրքերը եկւոր էին:

Արգարև այս իրողութեան վկայ են հին հեղինակներէն ոմանք:

Լուկիան (Աղեքսանդրոս) պափլագոնիացիներն ու պոնտացիները կը կոչէր «թանձր և անկիրթ» (παχεῖς καὶ ἀπαίδευτα):

Կոստանդին Ծիրանածին կայսր-պատմագիրը իր «Վասն Թեմաց» կամ «Թեմորայք» գործին մէջ (հրտ. Bonn քաղաքի էջ 21) կը վկայէ թէ կապադովկիացի գերիները յունական վաճառանոցներու մէջ շատ բազմաթիւ էին, բայց քիչ գին ունէին, վասնզի բիրտ ու կոշտ էին և շատ շատ պատգարակ կրելու կը գործածուէին:

Հնութեան ճանապարհորդներու վրայ ալ, կապադովկիացիք, գերի գեղջուկներու, առանց ոեւէ քաղաքակրթութեան ապուշ մարդիկներու տպաւորութիւնը թողած են: (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 36)

Ստրաբոն, որ կապադովկիացի է, իր հայրենակիցները իրենց անխոնջ ջանասիրութեան և յունարէն լեզուի հմտութեան պատճառով խնամով կը զատէ «Պարիադրէսի բարբարոսներէն» (ԺԲ. 3. 31) բայց այն հեղինակները՝ որոնք այս տեսակ վերապահում ընելու պէտք չունէին, հեգնութեամբ կը խօսին անոնց բիրտ աւելորդապաշտութիւններուն, ազմկալից խնջոյքներուն վրայ, ուր՝ վայրի որթատունկով գլուխը պսակած, կուտային իրենք զիրենք երգի և արբեցութեան և շուտով իրենց գլուխը կը տաքնար (Պլինիոս Իէ, 4–8):

Կապադովկիացիք ունէին շատ մը սեմական նկարագիր ունեցող բարքեր և սովորութիւններ, որոնք ամենահին ժամանակներէ սկսեալ ներմուծուած ըլլալ կը թուին, այնպէս որ ոմանց կարծել տուած է որ անոնք ցեղով ալ սեմական են:

Այսպէս իրենց շատ մը սովորոյթները, ինչպէս թլփատութիւնը,

խոզի միս ուտելու արգելքը, պաշտօնական կուսապղծութիւնը (աղ-
ջիկները մեհեաններու տալով) սեմական նկարագիրներ ցոյց կուտան։
Իրենց անկեալ բարքերը և նկարագիրը՝ թերեւս հետեւանք իրենց
գարերու ստրկութեան շատ լաւ համբաւի մը չէին արժանացուցած
կապադովկիացիները։ Առածի կարգ անցած էր սա խօսքը «երեք կէ
(«կապա» յոյն տառը) չարագոյն են, կրետացիք, կապադովկիացիք,
կիլիկեցիք կամ կարիացիք»։

«Ինչպէս ամէն միւս ազգերու քով՝ որոնք համաշխարհային հաղորդակ-
ցութեան վառարանէն հեռու ինկած են, նոյնպէս հին եւ նոր կապադովկիաց-
ւոց քով կը տեսնենք խիստ պահպանողական նկարագիր մը: Ծաս ակամայ կ'ըն-
դունին կամ կը թողուն հինաւուրց հեթանոսական սովորութիւնները, ակամայ՝
հին պարսկական կրօնքը, ակամայ՝ յունական-հռոմէական քաղաքակրթութիւնը,
քրիստոնէութիւնն ու արհեստականութիւնը» (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 100)։

Այնպէս որ քրիստոնէութիւնը որ Հռոմի ապականութիւնները
մաքրագործելով նոր նկարագրով ժողովուրդ մը կերտելու նպատակ,
չկրցաւ կապադովկիան հիմնովին յեղաշրջել բարքերու տեսակէտով,
վանզի կապադովկիացիք քրիստոնէութեան ընդունելութենէն յե-
տոյ ալ, կը նկարագրուին իբր վատ, գերի, կռուասէր և խորամանկ,
արծաթասէր, շուայտութեան հակամէտ, ստախօս և անհաւատարիմ
ժողովուրդ մը։

Այս մասին ամէնէն աւելի տեղեկութիւն տուող հեղինակն է
Իսիտոր Պեղուսիացին որ Գրիգոր Նազիանզացիէն քիչ մը վերջը, Ե.
դարուն սկիզբը կ'ապրէր։

Ինչպէս Ուլման կ'ըսէ իր Գրիգոր Նազիանզացիի կենսագրութեան
մէջ, (C. Ullmann. Biogr. d. hl. Theologeu Gregor von Nazianz.
Darmstadt. 1825 էջ 13) թէև այս տեսակ ազգի մը նկարագրին ընդ-
հանուր պատկերացումները յաճախ միայն նախապաշարումէ և ազգա-
յին ատելութենէ առաջ կուգան, բայց միշտ այս տեղ կան այլեւայլ
պարագաներ, որոնք կը վկայեն թէ Իսիտորի նկարագրութիւնը՝ թէ-
պէտև թերեւս չափազանցուած, գոնէ սուտ չէ։

Հեթանոսութեան ժամանակ Կոմանայի քրմապետն՝ որ Կապադով-
կիոյ թագաւորին չափ կամ անկէ աւելի ազդեցիկ դիրք ունէր երկ-
րին մէջ, անհամար կալուածներու հարստութիւն և այր և կին մե-
հենասպասիկներ ունէր Ստրաբոնի ժամանակ։

Թագաւորէն զատ, ազնուական տուները տէր էին բոլոր հողին,
և գիւղացիք ստիպուած էին իբր գերի գործել իրենց երկրին մէջ։

Կապադովկիա նշանաւոր էր իր մեծ թուով գերիներով, որոնք
իր թագաւորներուն գլխաւոր հարստութիւնը կը կազմէին։

Մեծ թիւ մը Հռոմ կը ղրկէին անոնցմէ, բայց մեծ համբաւ մը
չունէին։

Քուրմերու իշխանութեան և գերութեան վարժուած, կապադով-
կիացիք նոյնիսկ հռոմէական հասարակապետութեան վերջին ժամա-
նակներուն իրենց տրուած ազատութիւնը չուզեցին ընդունիլ։
(տես Ցուստինոս. ԻԸ. 2)։

Ցաջորդ դարերուն մէջ, երբ Հռոմի զինուորական աշխարհակալ
պետութեան նահանգներէն մին կը դառնար Կապադովկիա, հանգա-
մանքները յարմար չէին բարքերու վրայ լաւագոյն ազդեցութիւն մը
ընելու համար։



Այդ ժամանակաշրջանի պատմութեան և Գրիգոր Աստուածաբանի
կենսագրութեան մէջ յաճախ կը հանդիպինք կայսերական պաշտօն-
եաններու կողմէ խստութեան և կեղեքիչ ընչաքաղցութեան դէպքե-
րու և շատ քիչ անգամ ստորնացուած ժողովրդեան կողմէ՝ ապստամ-
բութեան պարագաներու։

Ուստի շատ յատկանշական է Իսիտորի խօսքը թէ կապադովկիա-
ցիք ուրիշ կեանք չունին այլ ծառայութիւն և երկրագործութիւն։
Վիճակ մը, որ դարեր տեւած է և եկած հասած՝ մինչև մեր օրերը։

Բրիտանական Համայնագիտարանը կ'ըսէ թէ կապադովկիացի գիւ-
ղացիները դեռ սովորութիւն ունին Փոքր Ասիոյ արեւմտեան կողմը
ծառայելու և տուն դառնալու երկայն բացակայութենէ յետոյ միայն։

Հետեւաբար Կապադովկիոյ բնակչութեան համար վաղեմի սովո-
րութիւն մըն էր պանդխտութիւնը և օտար երկրի մէջ բախտ
փնտռելը։

Իրենց աշխատութիւնը մեծապէս գնահատուած էր— ըստ Բրիտա-
նական Համայնագիտարանին— զանոնք գործածողներէն, քանի որ
կապադովկիացիք ուժեղ և ժուժկալ ժողովուրդ մըն էին։

Հինէն ի վեր կապադովկիացիք համբաւուած էին իբր ստրուկ և
նախապաշարեալ ժողովուրդ մը։

Սակայն անժխտելի իրողութիւն մըն է որ կապադովկիացիք՝ հե-
տեւանք թերեւս իրենց դարաւոր ստրկութեան — ասիկա կրկին կը
շեշտեմ,— ապականուած ու վատասերած ժողովուրդ մըն էին։

Գրիգոր Աստուածաբան, կը գանգատի իր ազգին, և մասնաւորա-
պէս իր աթոռին՝ Նազիանզի՝ բնակիչներու բարքերու ապականու-
թեան համար։

Այս տեսակէտով խստագոյն նկարագրութիւնը կը գտնուի Իսի-
տոր Պեղուսիացիի այն նամակներուն մէջ, ուր իր բարկութիւնը կը
թափէ Ստորին Եգիպտոսի Դիգանտիոս անուն կուսակալին վրայ՝ որ
ծննդեամբ կապադովկիացի մըն էր։

Դիդիմոսի ուղղուած թուղթին մէջ կը գրէ բառ առ բառ այսպէս.
«Քանի որ այս մարդկան չարութիւնը գրով աւանդուած ունիս, կը զարմանա՞ս
«դու Գիգանտիոսի վրայ: Խորամանկ ու ապականած է բոլոր ցեղը, չուրախա-
«նար խաղաղութեամբ, կռուասէր է եւ նոյն աղբիւրէն քաղցր ու դառն բխե-
«լով: Առջեւդ լաւ կը խօսին, ետեւէդ կը նախատեն զքեզ, խաբեբայ, անամօթ,
«լիրբ, վատ, ծաղրածու, գերի, խարդախ, մարդատեաց, հպարտ, բարեկամաց յա-
«ջողութեամբ տրտմող եւ դժբախտութեամբ անյագ ուրախացող, պաշտպանութեան
«պատրուակի տակ գեղեցիկ կանայք գերի տանելով, ընչաքաղցութեամբ բաբելա-
«ցիներէն ալ վեր են. քաջ ստախօս եւ ստերդմնութեան պատրաստ: Ինչպէս որ
«ամենայոռի եւ ամենատեղի Գիգանտիոսը կը ճանչնաս, նոյն համարէ բոլոր կա-
«պադովկիացիքը»:

Նոյն ոճով կը գրէ միւս թուղթին մէջ ալ, ուղղուած Ամմիանոսի,
ըսելով՝ «Ի՞նչ ունիս այս անասնակերպ ցեղին (τῷ γενεῖ τῷ θηριοτρόπῳ) հետ,
«ի՞նչ կ'ուզես այս *օտարացեղ* ազգէն (τῷ ἔθνει τῷ ἀλλοφύλῳ), ինչո՞ւ կ'աղ-
«տոտես ինքզինքդ այս բռնամիներուն հետ, ի՞նչ կ'ոգորիս կապադովկացւոց հետ.
«ինչո՞ւ կը զինուիս մարդկան դէմ՝ որ Գիգանտիոսի նման են, ուստի Գիգանտա-
«կիցներ (τοὺς Γιγανταίους συγγίγαντας) ի՞նչ կը գրգռես այս գինեմոլները, կը
«բարկացնես կատաղի շուները՝ որոնց խածուածքը մահ է, կը սրես բռնամալից
«լեզուները, կ'արատաւորես համբաւդ՝ խառնուելով այն մարդկան հետ՝ զորոնք
«խելացի մը նաեւ իբր գերի պահել պիտի չուզէր»:

Սակայն խիստ նշանակելի է որ նոյն այդ խստադատ հեղինակը՝ Գրիգոր որ այնքան դառն բառերով կը խարանէ կապադովկիացիները կ'ընդունի թէ անոնց ապականութիւնը ոչ թէ «բնածին չարութիւն» (πονηρία ἔμφυτος) է այլ վերջէն իրենց յանցանքով եղած։ (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 228–229)։

Ասով միայն կը մեկնէ Իսիտոր այն իրողութիւնը թէ հոն ծնած են այնչափ նշանաւոր անձեր, և այս ապականուած մարդոց մէջ ծաղկած են ամենամեծ Ս. Հարց սերունդը։

Բարձրագոյն հոգի մը ուրեմն ճիշդ այս այլասերած սերունդներու մէջէն կը յարուցանէր, անոնց հոգիները զարթուցանելով, ընտիր գործիքներ, որոնք տիրող ապականութեան մէջ երեւան կուգան իրենց գերազանցապէս ազնիւ նկարագիրով՝ աւելի՝ կարկառուն և աւելի պանծալի։

Այսպէս Կապադովկիա Դ. դարուն ընթացքին ծնունդ կուտայ շարք մը մեծահռչակ քրիստոնեայ եկեղեցւոյ Ս. Հարց, որոնք ամենանշանաւոր դեր մը կատարած են, իրենց քարոզչական և մատենագրական ծառայութիւններով։

Այս նշանաւոր մարդիկը, թէև իրենց ներքին միտումներով և իրենց շուրջ տիրող բարոյական վիճակէն ազդուած՝ յաճախ անապատային մենակեացութեան դիմեցին, սակայն երբ ժողովուրդին մէջ մտան հովուական և քարոզչական գործունէութեամբ, թէ՛ իրենց ծանրութեամբը և թէ՛ իրենց ոգւոյն ներքին զօրութեամբը աւելի ազդու կերպով ներգործեցին իրենց ժամանակակիցներուն վրայ։

Այս է պատճառը որ Գրիգոր տեսակ մը պարծանքով կը խօսէր իր հայրենակից կապադովկիացիներուն վրայ, և իր սրտին շատ մօտ էր՝ իր հայրենիքին սուրբ հողն ազատել ընդհանուր ապականութեան ծանր ամբաստանութենէն։

Գրիգոր Աստուածաբան իր Թուղթերէն մէկուն մէջ (Թղ. ճԼԸ) կ'ըսէ. «Սուրբ է մայրը պատուել, իւրաքանչիւր ոք ունի զատ մայր մը, բայց հասարակաց մայրն է հայրենիքը»:

Ուրիշ տեղ մը (ճառ ԽԳ) կ'ըսէ թէ Կապադովկիա ոչ միայն ազնիւ ձիեր առաջ կը բերէ, այլ նաև ազնուագոյն երիտասարդներ։

Ան նաև կը գովէ կապադովկիացիներուն ուղիղ հաւատքը և յատկապէս Կեսարիա մայրաքաղաքը (ճառ ԽԳ և Դ.)։

Արդարև Կապադովկիա օրօրանը եղած է կրօնական գեղեցիկ փթթումի մը և ոգեւորեալ գործունէութեան մը, որ ապականուած ժողովուրդին ծոցէն ծնած մարդերու ղեկավարութեամբ կատարուած է։

Ապականութիւնն ու բարքերու վատթարացումն որ տիրող մթնոլորտն էր Կապադովկիոյ, միայն երկու շարժառիթ ունէր, մին բնական և միւսը քաղաքական և եթէ խորանալու ըլլանք մեր քննութեան մէջ՝ միայն բնական, վասնզի քաղաքականն ալ կերպով մը հետեւանք էր բնականին, վասնզի այն մշտնջենական ստրկութիւնը և օտար լուծը որ կրել հարկադրուեցաւ Կապադովկիա մէկ անխուսափելի հետեւանքն էր երկրին աշխարհագրական դիրքին։

Կապադովկիացիք բարքերով վատթարացած են երկրին աշխարհագրական դիրքին հետեւանօք իրենց ենթարկուած քաղաքական ճնշումներուն և հողին և կլիմայական անյարմարութիւններուն պատճառով իրենց չափազանց աղքատութեան և չքաւորութեան համար։



Մասնաւորապէս Կեսարիոյ նահանգը երկրագործական երկիր մը չէ եղած իր լայնագոյն իմաստով և չէ ներկայացուցած երբեք առատութեան և ճոխութեան վայր մը, հակառակ անոր որ հին ժամանակներէն սկսեալ կապադովկիացիք կը հետեւէին երկրագործութեան, առանց շատ առատօրէն վարձատրուելու։

Նոյնպէս անոնք կը հետեւէին խաշնարածութեան, որ նմանապէս երկրին աղքատ բուսականութեան պատճառով շատ յետամնաց էր, հետեւաբար կապադովկիացիք առ հասարակ աղքատ ժողովուրդ մը եղած են, և աղքատութեան հետեւանքներով առաջ եկած բոլոր ապականութիւններէ զերծ չեն մնացած, և ամէնէն անարգ արարքները գործած են։

Մասնաւորապէս գերեզմանակրկիտները այնքան շատ էին, որ Գրիգոր Նազիանզացի 100ի չափ վերտառութիւններ գրած է գերեզմանակրկիտներուն դէմ։

Թէքսիյէ իր հռչակաւոր գործին մէջ (Texier. Description de l'Asie Mineure II. Paris, 1849 էջ 21), ազդու խօսքերով կը նկարագրէ աղքատ ու ընչաքաղց կապադովկիացիներու ձեռքով հին յիշատակարանաց և շիրիմներու փճացումը։

«Հռչակաւոր առաքեալներէն մին՝ Գրիգոր Նազիանզացի, եպիսկոպոս Սասիմայ, կը ցուցնէ Կապադովկիացիք բռնաւորութեամբ ապականած եւ դիակողոպտութեան ամօթալի արուեստին անձնատուր: Անոնց մէջ, հեթանոսութեան մարելէն ի վեր եւ երբ գիւղացիք ա՛լ չէին վախնար ո՛չ դժոխքի-դից սպառնալիքներէ եւ ո՛չ ալ տուգանքի պատիժներէն՝ որոնց կը դատապարտուէին շիրիմնակապուտները (1), նոր տեսակ արուեստ մ'երեւան եկաւ որ սկզբան շահաբեր էր: Անթիւ դամբան-անձաւներուն ամէն մէկը՝ որոնք-ժայռի մէջ պեղուած են, բացի մեռեալին անունէն՝ կը պարունակէին նաեւ նուէր մըն ալ դամբանին պահապան դիցուհիին. դարձեալ՝ զոհարներ, թանկագին զէնքեր՝ զինուորականաց ոսկի դրուած. կամ կանանց վերջին զարդերը: Ապացուցուած կ'երեւայ թէ արդուզարդի ականակապներ՝ զորոնք անիւններու հետ կը գտնենք, պաս-

(1) Արդարև նախ քան քրիստոնէութիւն շատ մը օրէնքներ կան որոնք դրամական պատիժ կ'սպառնան գերեզմանի հանգիստը բռնաբարողներուն։ Սողոնի օրէնսդրութեան մէջ տրամադրութիւններ կային շիրիմներու փորողներուն և կողոպտողներուն դէմ։ (Կիկ. օրէնք Բ. կդ)։

Հին ժամանակներու մէջ այսպիսի կողոպուտներ յաճախ կատարուած ըլլալը կը հաստատէ τυμβωρύχος (= դամբանակրկիտ) բառին գոյութիւնը։

Քրիստոնէութենէն յետոյ ալ դամբանակրկիտներ գոյութիւն ունէին, վասնզի Դ. դարուն կան հրատարակուած անոնց դէմ բազմաթիւ կայսերական հրովարտակներ։ (Թէոդոսեան Օրէնք, ԺԴ. ԺԷ. եւայլ)։

Քսենոփոն Եփեսացիի, Քարիտոնի և այլ վէպերու մէջ և նոյնիսկ Կուինտիլիանոսի Բեմբասացութեանց մէջ սովորական տիպարներ են գերեզմանակապուտները։ (տես H. Zimmerer, Declamatio in Catilinams, München. 1888)։

«րաստուած էին յատկապէս այս յուղարկաւորական սովորութեան համար, բայց «ո՛չ այն զոհարներն էին՝ զոր կենդանութեան կրած էր մեռեալը: Ձէնքերուն «համար նոյնը չենք կրնար ըսել: Թերեւս նոյնիսկ այս դամբան-անձաւներուն «մէջ կը պահէին ընտանիքները իրենց գանձերը՝ որոնք միշտ վտանգի ներքեւ էին «խռովութեանց ժամանակները: Կապադովկիացիք անընդհատ հարստահարու«թեանց հետեւութեամբ Փոքր Ասիոյ ամէնէն աղքատ ժողովուրդն եղած՝ մոլեգ«նութեամբ հետամուտ եղան այս սրբապիղծ գերեզմանակապտութեանց, ուր իրենց «ընչաքաղցութիւնը մեծ ճարակ կը գտնէր: Թէեւ գլխաւորաբար հեթանոսաց շի«րիմները կը կողոպտէին(1), ջանաց Ս. Գրիգոր Նազանզացի սանձ մը դնել այս «եղծագործ քանդմանց՝ որոնց զոհ կ'ըլլային նոյնիսկ յիշատակարանները. բայց «կ'երեւայ թէ իր խօսքերը շատ լսող եղած չէ: Ասոր վրէժը կ'առնէ Ս. եպիս«կոպոսը բազմաթիւ վերտառութիւններով, որոնցմէ 80-էն աւելի մեզի հասած են. յօրինուած կ'երեւան իբր 372-ին» եւայլն: (տես Գր. Նազ. Վերտառ. ՃԺԷ. էջ 146)։

*Նաեւ Ս. Բարսեղ կ'ողբայ կապադովկացւոց աղքատութիւնը։ ինքն իսկ նեղն էր և ո՛չ արագագիր* (εἰς ταχος γράφων) *մը կրնար գտնել.* (Migne· *հատ. ԼԲ. Թուղթ ՃԼԵ). Ժանր եկեղեցական պատիժներ ալ դրած է գերեզմանակրկիտներուն դէմ. (տես ԿԶ)։ Գրիգորի 80 վերտառութիւնները իր հայրենակիցներուն քանդման կատաղութեան և ընչաքաղցութեան դէմ՝ ուղղուած են մեծ մասամբ Մարտինիանոս կուսակալին. (տես Վերտառ. ԽԹ. եւայլն)։*

*Ահա օրինակ մը այս վերտառութեանց՝*

(ՀԷ.) «Դամբանք եւ անձաւք եւ լեռներ եւ ուղեւորք
Ողբացէք շիրիմս, ողբաքացէք աւերիչն.
Արձագանգ թող կրկնէ բնակչաց վերջին հառաչն.
Ողբացէք գերեզմանի աւերիչն»:

(ՂԳ.) «Դամբան էի՝ պարծանք շրջակայ մարդկան,
Այժմ եմ կոթող գերեզմանակապուտ ձեռքին»:

*Այս ոճրագործութեան այնչափ արմատացած ու տարածուած ըլլալը, շատ պայծառ կը տեսնուի Գրիգոր Նիւսացիի կանոնական Թուղթէն* (*անդ՝ ԽԵ. էջ* 233) *որ ա՛լ ներողամիտ աչօք ստիպուած էր նայիլ և չէր համարձակեր բացէ ի բաց դատապարտել գերեզման բացողները։*

*Ալ ի՞նչպէս կրնային հին շիրիմները և յիշատակարանները խնայուիլ, երբ նոյնիսկ սուրբ եպիսկոպոս մը ստիպուած է ընդունիլ թէ պէտք է զանազանութիւն ընել կողոպուտներուն մէջ՝ թէ ինչ նպատակի կը գործածէ կապտիչը իր աւարը, օրինակի համար՝ երբ իր անձնական տունը շինելու կը գործածէ քարերը եւայլ, քանի որ այս յոռի սովորութիւնը անգամ մը տիրապետած է։*

*Զիմմերէր* (*ՀԱ.* 1900 *էջ* 230) *հետեւաբար չի զարմանար որ հազա-*

(1) *Դ. դարէն սկսեալ կ'երեւայ թէ քրիստոնեայք հեթանոսներու շիրիմները ապականել սովորութիւն ըրած էին։ Նոյնիսկ եկեղեցականներ մասնակցած կ'երեւան. (տես Վալենտինիանոսի օրէնք Ե.) Եգիպտական մենակեաց մը կը յիշուի որ առաջ* «աւազակաց պետ եւ գերեզմանաց կողոպտիչ» *էր (տես Ռուփինոս.* Vit Patr. 9. *էջ* 466)։



*բաւոր անձաւներու երկիրը այցելելով՝ միայն ամէն ինչէ թափուր և պարապ վայրեր գտած է, ծածկուած միայն որմնանկարներով՝ որոնք կողոպտել անհնար էր։*

«Ճիշդ այս երկրին մէջ քար քարի վրայ չէ մնացած, ոչ տաճար մը՝ ապահով տաճարակապուտներէ եւ ո՛չ ալ շիրիմ մը գերեզմանակրկիտներէ» (Zimmerer, *ՀԱ.* 1900 *էջ* 229)։

*Ասիկա ինքնին ցոյց կուտայ թէ աղքատութեան որ աստիճանին մէջ կը գտնուէին որ գերեզմակրկիտութիւնը իրենց բանգործ ըրած էին։*

*Իրենց երկրին աղքատ արդիւնաբերութեան մէկ ուրիշ արգասիքն էր ցորենը երկար ատեն պահելու եղանակը զոր սորված էին կապադովկիացիք, թերեւս սովի երկիւղով։*

*Կապադովկիացի երկրագործները իրենց ցորենը կը պահէին* «սիլոս» (silos) *կոչուած ամբարներու մէջ որոնք երկար անցքեր էին յարդով պատած և օդախիտ գոցուած։*

*Ասոնց մէջ ցորենը* 50 *տարի, իսկ կորեակը մէկ դար անգամ կը դիմանար։*

*Այս տեղական սովորութիւնը հաստատուն մնացած էր երկար ատեն։*

«Ամէն տեղ՝ ուր կրցանք քարայրները այցելել — կ'ըսէ Զիմմերէր —, արդէն Մելեգոբէն մինչեւ Ալիսի ափը դէպի Արեբսուն, Զաս, Տասլար, Մաչան, եւ Իւրգուբ, ուր գիւղացիք քարայրները կը գործածեն իբր ցորենի եւ խոտի համբարանոց, կրցանք յաճախ դիտել թէ ինչպէս չոր պատը լաւ կրնայ պահել ցորենը, որ նաեւ «30 եւ աւելի տարիներ ետքը միշտ ծլելու ատակ կը մնայ»: Վարոն (Varro, de re rustica, I. 57. 2). Պլինիոս (ԺԸ. 30. 306) եւ Թէոփրաստ (Hist. plant. VIII. 11. 5) խօսած են մեզի հացահատիկներու այս շտեմարաններուն մասին:

Թէոփրաստ կը պատմէ ալ որ ի Պետրա (Պետրիա՞) Կապադովկիոյ՝ ցորենը 60 կամ 70 տարի ետքն ալ ուտելու կրնայ գործածուիլ՝ նաեւ ցանելու՝ 40 տարի ետքն ալ» (ՀԱ. 1900 էջ 37):

*Կապադովկիացիք իրենց հացահատիկները կ'աղային հին ձեռքի աղորիքներով — նշանակ դարձեալ աղքատութեան —, թէև կային նաև ջաղացքներ։*

*Երկրին ընդհանուր աղքատութիւնը՝ արդիւնք արդիւնաբերութեան պակասին, դրոշմուած էր նաև իր քաղաքներուն, աւաններուն և գիւղերուն վրայ, որոնք մեծ մասամբ շինուած են խոռոչներու կամ փոսերու մէջ և շրջապատուած ուղղաձիգ որմաձև քարաժայռերով, այնպէս որ հեռուէն կարելի չէ նշմարել զանոնք և դաշտերը կը թուին անապատ ու անշէն։*

*Տուները յաճախ կառուցուած են հրաբխային քարերով՝ որոնք առձեռն կը գտնուէին և երբեմն՝ մանաւանդ հին ատեն անոնք փորուած էին ժայռերու մէջ։*

*Նոյնիսկ բազմաթիւ էին եկեղեցիներն որոնք պեղուած էին քարի զանգուածներու մէջ։*

*Այնպէս որ շատ իրաւամբ* Jean Hatzfeld (Les Trafiguants italiens dans l'Orient hellénique. Paris· 1919 *էջ* 137–138) *դիտել կուտայ թէ* «Կապադովկիան միշտ դուրս մնացած է քաղաքական եւ տնտեսական գործունէութենէն Յունա-Հռոմէական աշխարհին: Տափաստաններու յատուկ խիստ կլիմայ

ունեցող բարձր լեռնադաշտեր, արտասովոր հրաբխային գաւառներ, աւաններ, ամրոցներ (Ստրաբոն, ԺԲ. 537) սուրբ քաղաքներ (նոյն), բայց ոչ մէկ ոստան (cité) բառին հելլէնական իմաստով, բոլոր ասոնք չեն հրապուրած աշխարհակալները կամ գործի մարդիկը: Սելեւկեանք անտարբեր էին առանց ապագայի այս երկրին նկատմամբ, (Ստրաբոն ԺԲ. 534), Հռոմէացիք կապադովկիացիներուն ընծայեցին ազատութիւն մը որ այս ժողովուրդը գտաւ շատ ծանր հանդուրժելու համար (Ստրաբոն ԺԲ. 540): Իտալացի վաճառականները բան մը չունէին ընելիք երկրի մը մէջ որ այնքան քիչ կ'արտադրէր: Անով հանդերձ մասնաւոր պարագաներ հոն կոչեցին ժամանակի մը համար negotiatore-ները

Արիոբարզան Գ. թագաւորը, գահ բարձրանալէ առաջ, անխոհեմութիւնը ունեցած էր փոխ առնելու Պոմպէոսէն որ Միհրդատի պարտութենէն յետոյ, (նախ քան Քրս. 64-ին), դարձած էր Ասիոյ ամէնէն մեծ դրամատէրը:

Արիոբարզան, երբ գահ բարձրացաւ ստիպուեցաւ ծախել իր ինչքերը որպէսզի չգրաւուին, եւ տեսաւ զալուսը' իր թագաւորութեան մէջ գործակատարներու խումբի մը որոնք ուրիշ բան չէին եթէ ոչ Պոմպէոսի փոխանորդները (= Procuratores) (Կիկերոն, ad. att. Զ. 1. 3.): Իր գանձը դատարկ էր (նոյն- Ե. 1. 3.): Իր քաղաքական կացութիւնը ապահովուած չէր, պէտք էր պայքարէր Կոմանայի կղերականութեան ընդդիմութեան դէմ: (նոյն, ԺԵ. 4. 6.) Երկրին երկու կամ երեք մեծ դրամատէրները (financier = ելեւմտագէտ) չէին ուզեր թողուլ իրենց պահուած իրաւունքները (նոյն, Զ. 1. 3.):

Կարծեց փրկուիլ դժուարութենէն կնքելով նոր փոխառութիւն մը Իտալական կարեւոր տունէ մը որ կը թուի ունեցած ըլլալ ներկայացուցիչներ Կապադովկիոյ եւ Կիպրոսի մէջ, եւ զոր կը վարէր Scapti ընտանիքը (նոյն, Զ. 1. 3. 5. 6.):

Ասիկա էր այն դրամատունը որ կը մատակարարէր Բրուտոսի դրամագլուխները եւ դարմանն էր յոռեգոյն քան չարիքը, վանզի երիտասարդ ստոյիկեանը, պահանջող առնելիքուոր մըն էր: 51ին, Արիոբարզանի գահակալութեան տարին, տոկոսները այնքան բարդուած էին դրամագլուխին վրայ որ դժբախտ թագաւորը ստիպուած էր վճարել 30 տաղանդ ամիսը' Պոմպէոսի գործակատարներուն: 15 տաղանդ M. Scaptius-ի եւ իր շահ ընկերոջ M. Gavius-ի (նոյն, Զ. 3. 5. հաստատուած Զ. 1. 3.): Հաւանական է որ վերջ ի վերջոյ ինքզինք փրկեց. մինչեւ իր մահը իր ելեւմուտքը բարգաւաճ էր, բայց մինչեւ իր կեանքին վերջը կը թուի պահած ըլլալ ատելութիւն ընդդէմ Բրուտոսի որ այնքան խստութեամբ շահագործած էր զինքն իր թագաւորութեան սկիզբը»:

*Այս տողերը ապացոյց մը աւելի կուտան ան աննախանձելի կացութեան մասին, ուր կը գտնուէր երկիրը տնտեսական տեսակէտով:*

## ԺԱ.

## ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ

Կապադովկիա երբեմն ունէր անհամեմատ ընդարձակութիւն Սեւ ծովէն մինչեւ Տաւրոսեան լեռները տարածուած ըլլալով:

Դարերու ընթացքին անիկա ենթակայ եղաւ ստորաբաժանումներու:

Առաջին ստորաբաժանումը անոր երկուքի բաժանումը եղաւ, Փոքր եւ Մեծ կոչումներով:



Փոքր-Կապադովկիան յետոյ առաւ Պոնտոս անունը, իսկ Կապադովկիա անունը սեփական մնաց Մեծ-Կապադովկիոյ որ իր կարգին յետոյ Առաջին եւ Երկրորդ Կապադովկիա անուններով բաժանումներու ենթարկուեցաւ:

Յաջորդ դարերու մէջ անիկա զանազան վարչական բաժանումներու ենթարկուած է տիրապետողներու քմահաճոյքին համաձայն, ինչպէս պիտի տեսնուի յաջորդ էջերուն մէջ, երբ իր պատմութեան ծալքերը պարզուին:

Այն շրջանակը որ մասնաւոր շահագրգռութեան առարկան է այս հատորին, գրեթէ կ'ընդգրկէ երբեմն Գաղատիոյ կուսակալութեան մաս կազմող Կեսարիոյ գաւառը (Սանճագ) որ ունէր իրեն ենթակայ երեք գաւառակներ (Գազա) որոնք էին.

1. Կեսարիա 102 գիւղերով
2. Ինճէ-Սու 22 »
3. Տէվէլու 75 »

եւ երկու գիւղախումբեր (նահիյէ), որոնք էին.

1. Գարահիսար
2. Կէօստէրէ

Վարչական այս բաժանումը ըստ V. Cuinet-ի (Ա. հատոր էջ 249–250) ունէր բնակչութիւն մը 210,732 հոգիէ բաղկացեալ:

| | |
|---|---|
| 136,590 | Իսլամ |
| 25,449 | Յոյն-Օրթոտոքս |
| 45,318 | Հայ |
| 1,575 | Հայ-Կաթոլիկ |
| 1,800 | Հայ-Բողոքական |
| 210,732 | համագումար |

Ընդհ. պատերազմէն քիչ առաջ Թուրք կառավարութիւնը Կեսարիոյ Սանճագը անջատելով էնկիւրիւի վիլայէթէն վերածեց միւսթագիլ միւթասարրֆութեան (անկախ կառավարչութեան) որով վարչականապէս կը կապուէր ուղղակի Բ. Դրան:

Թուրք հանրապետութեան հաստատուելէն յետոյ երբ նոր կազմակերպութիւն տրուեցաւ երկրին վարչական բաժանումներուն եւ նախկին բոլոր մեծ կուսակալութիւնները ջնջուելով Սանճագները նոր բաժանումներով կուսակալութիւններու վերածուեցան, Կեսարիոյ անկախ կառավարչութիւնն ալ ընդարձակուելով երկու գաւառներու յաւելումով, որոնք Սեբաստիոյ կուսակալութենէն առնուեցան, վերածուեցաւ կուսակալութեան մը:

Այսօրուան Կեսարիոյ կուսակալութիւնը կը գտնուի Փոքր Ասիոյ կեդրոնին վրայ, եւ արդի վարչական բաժանումներու համաձայն, շրջապատուած է արեւելքէն Սըվազի, հարաւէն Ատանայի, արեւմուտքէն Նիկտէի եւ Գըրշէհիրի կուսակալութիւններէն, եւ հիւսիսէն Եօզկատի կուսակալութեան Պօղազլըեան եւ Սըվազի Շարգըշլա գազաներով:

Կեսարիոյ կուսակալութիւնը առաջին կարգի կուսակալութիւններէն մին կը նկատուի:

Քանի մը տարի առաջ կազմուած վիճակագրութեան մը համաձայն կուսակալութեան բնակչութիւնն էր 251,370 անձ, որոնցմէ 132,822ը կին եւ 118,488ը այր, այնպէս որ կիները 13,394 աւելի են քան այրերը: (Քէմալէտտին էջ 10):

կուսակալութեան տարածութիւնն է 13,910 քառակուսի քիլօմէթր և կը բաժնուի 5 գաւառներու, 15 նահիյէներու և 510 չէներու։

Իր գաւառներն են

1. Կեսարիա (կեդրոնական)
2. Ինճէսու
3. Տէվէլու (Էվէրէկ)
4. Բունար Պաշը
5. Պիւնեան

1 յունիս 1933ին Կեսարիոյ կուսակալութեան կցուած է նաև Իւրկիւպի գաւառ Նիկտէի կուսակալութենէն բաժնուելով (Քէմալէսցին էջ 104), որով 6ի վերածուեցան Կեսարիոյ գաւառները։

1927ին կատարուած մարդահամարին համաձայն հետևեալ պատկերը կը ներկայացնէր Կեսարիոյ կուսակալութիւնը (Քէմալէսցին էջ 33)։

| ԳԱՁԱՆԵՐ | Արձանագրուած անձեր | | | Տարածութիւն $K^2$ | Անձ իւրաքանչիւր $K^2$ | Վայրեր |
|---|---|---|---|---|---|---|
| | Այր | Կին | Գումար | | | |
| 1. ԿԵՍԱՐԻԱ | 47554 | 52159 | 99713 | 2860 | 34.9 | 92 |
| 2. ՏԷՎԷԼՈՒ | 23528 | 27325 | 50853 | 2900 | 17.5 | 101 |
| 4. ԻՆՃԷ-ՍՈՒ | 8275 | 9436 | 17711 | 1000 | 17.7 | 26 |
| 4. ՊԻՒՆԵԱՆ | 17492 | 19996 | 37488 | 2820 | 13.4 | 96 |
| 5. ԲՈՒՆԱՐ-ՊԱՇԸ | 21639 | 23966 | 45605 | 4330 | 10.5 | 208 |
| 6. ԻՒՐԿԻՒՊ | 9546 | 11873 | 21419 | 1220 | 17.5 | 30 |
| Համագումար | 128034 | 144755 | 272789 | 15130 | | |

ԺԲ.

## ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԵՒ ԳԱՄԻՐՔ ԿՈՉՈՒՄԸ

Ըստ Հերոդոտոսի «Կապադովկիա» կոչումը երկրին տրուած էր պարսիկներու կողմէ, մինչ յոյները այդ երկրին բնակիչները կը կոչէին «սիւրացի» կամ «ասորի» կամ «սպիտակ սիւրացի» կամ «սպիտակ ասորի» զանազանելու համար Թխադէմ ասորիներէ։ Առաջին յոյն հեղինակը որ կը գործածէ Καππαδοχία = Կապադովկիա(1) բառը Հերոդոտոսն

(1) Հոս միանգամ ընդ միշտ ըսեմ թէ այս աշխատութեան բոլոր ընթացքին նախընտրեցի գործածել Կապադովկիա ուղղագրութեամբ այս երկրին անունը, որ ըստ տառադարձութեան ճշգրտութեան պէտք էր ուղղագրուէր Կապպադովկիա, հետևելով յունական Καππαδοχία ուղղագրութեան։ Սակայն հեղինակաւոր հայկաբաններու ինչպէս Տաշեանի, Գաթրճեանի և այլոց գրիչով այս բառը մէկ Պ-ով մը գրուած տեսնելով՝ օգտուեցայ տառի մը այդ խնայողութենէն։ (Հմմտ. Տաշեան Ուսում. Դասական Հայերէն լեզուի. Անցիր ժամանակ. Վիեննա 1920 էջ 237 եւայլ բազումք)։



է։ Այս բառը ըստ Zimmerer-ի, կ'ենթադրէ «կատպատուկ» ձև մը, որ «կատվաս» ձեւին աւելի մօտիկ է քան պարսկական «կատպադուկա»ն որ թերեւս «Հաթերու երկիր» նշանակէ։ (Հմմտ. ՀԱ. 1900 էջ 22 և Տաշեան Ուսում. դասական Հայ լեզուի էջ 237)։

Maspero կը հաւաստէ թէ Եգիպտացիք ալ «Հաթերու կամ Քաթերու Երկիր» կը կոչէին Կապադովկիան, վասնզի այս երկրին տրուած Kada Yachn անունը այդ կը նշանակէր։

Zimmerer (ՀԱ. 1900 էջ 22) կ'ըսէ թէ Ռամսէսի ժամանակ եգիպտական արձանագրութիւններ այս հողամասը կը կոչէին Kada Vadn (Նոր եգիպտական հնչումով Kadavadn) որուն նոյնը ըլլալը յետնոց Katpatuk (=Կատպատուկ, այսինքն՝ Կապադովկիա), անունին հետ՝ զարմանալի է որ մինչև հիմա ոչ ոք դիտած է։

Բայց նորագոյն աւելի խորազննին քնութիւններ ցոյց կուտան թէ ենթադրուածէն շատ աւելի հնագոյն ծագում մը ունի այս բառը։

Հաթերը, որ Փոքր Ասիոյ մէջ կ'ապրէին շատ առաջ քան պարսիկները և Փոքր Ասիոյ մէջ հիմնած էին մեծ կայսրութիւն մը, Պոնտոս-Կապադովկիան կ'անուանէին Կիսուվատնա = Kizzuvadna ինչ որ «հիանալի կերպով կը համաձայնի հնագոյն Kappatok անունին, Katpa-ducha.» (Jos. Karst. — Die Vorgeschichtichen Mittelmeervölker nach Ursprung Schichtung und Vetwandschaff. Heidelberg 1931 էջ 697 տես պրոֆ. Աստ. Խաչատրյան. Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն. հիմնված արձանագրական տվյալների վրա շուրջ 3000–600 նախքան մեր Թ. Երևան 1933 էջ 54)։

Կիզուվատնա կամ Կիզվատնա բառը աւելի առաջ դիտել տուած էր Ալբերդ Կեոցէ թէ «Նախաքառն է Կատպատուկա-ի, Կապադովկիային» (տես Alb. Gotez. Klainasien zur Hettiler Zeit.— Orient und Antike I. 1924 էջ 4–5 տես պրոֆ. Աստ. Խաչատրյան նոյն էջ 53)։

Նոյնպէս ուրիշ գիտուն մը Հերցֆիլտ (Ernst. Herzfeld) Կիզվատնա անուան մէջ տեսած է պարսկական Katpatuka (Kappadokes) բառին ծագումը։

Բիլաբիլ (Friedrich Bilabel) կ'ըսէ թէ «Հերցֆիլդն իրաւամբ այս անուան (=Կիզվատնա) մէջ տեսաւ պարսկական Katpatuka (Kappatokes), որը կը տեսնենք անգամ մը K ազգային ածանցով, ուրիշ անգամ մը — an երկրի ածանցով...»: (պրոֆ. Աստ. Խաչատրյան նոյն էջ 54)։

Կիզվատնան — an ածանցով Katpatuka-ի Kappadokia-ի հետ նոյնը ըլլալու տեսութիւնը որ Հերցֆիլտէն զատ ընդունած է նաև «Հին Արեւելքի Ազգագրութեան եւ Աշխարհագրութեան» նշանաւոր հեղինակը Հոմմել (Fr. Hommel), կը հաստատէ նաև Ed. Meyer։ (Պրոֆ. Ա. Խաչատրյան նոյն էջ 58)։

Եթէ այս տեսութիւնը ճիշդ է, ուրեմն Կապադովկիա բառին ծագումը շատ հին ժամանակներու կը հասնի։ Եւ չափազանց ուշագրաւ իրողութիւն մը երեւան կուգայ որուն վրայէն կարելի չէ լռութեամբ անցնիլ։

Կիզվատնա կամ Կիսուվատնա, նախաբառը Կապադովկիոյ կամ Կատպատուկայի, չունէր իբր դիրք ճշդիւ այն սահմանները որ վերջը Կապադովկիա առացաւ կամ աւելի հաւանականօրէն Պոնտոսի սեպական անունն էր և ինչպէս յայտնի է Պոնտոս երբեմն անբաժան մասն էր Կապադովկիոյ։

Ըստ Ed. Meyer-ի «Կիզվատնա... սահմանակից էր ծովու» և կը գտնուէր

Իրիսի գետահովիտին մէջ մինչեւ ծով՝ Հաթեան Բարձրավանդակին Հիւսիս-արեւելքին մէջ։

Ըստ Eck. Unger-ի «Կիզվատնան արեւելեան Փոքր Ասիոյ մէջ Սեւ ծովու եւ վերին Եփրատի միջեւ երկիր մըն է եւ կ'ամփոփէ Պոնտոսն եւ Արմենիայի մէկ մասը»: (Պրոֆ. Ա. Խաչատրյան նոյն էջ 55)։

Տեսութիւն որուն կատարելապէս կը համաձայնի Վայտնէր (E. Weidner) յայտարարելով որ «Կիզվատնա անունն էր արեւմտեան Արմենիայի եւ Պոնտոսի: (Տես պրոֆ. Ա. Խաչատրյան Հայաստանի Սեպ. արձ. պատմու-թյուն էջ 543 առած է նոյն հեղինակին «Ein Brief Des königs von Kis Watna» գործէն (Archiv Orientforschung VI H 6. 229)։

Հաթեան պետութեան մաս կազմող Կիզվատնաշ = Կիզվատնա = Կիսուվատնա երկիրին տեղը մօտաւորապէս արդի Պոնտոսը ըլլալուն համար, առ հասարակ համաձայն են բազմաթիւ նշանաւոր գիտուն-ներ (1) (տես պրոֆ. Ա. Խաչատրյան Հայաստանի սեպ. արձ. պատմ, էջ 53), այնպէս որ մեծ իրաւամբ ըսած է ուրիշ գիտուն մը թէ «Կիզուվատնա= Պոնտոս եւ Գաակա = Փոքր Հայք՝ հիմնաքարերն են Անատոլիայի աշխարհագրու-թեան, որոնք դիւրաւ չեն շարժուիր» (W. F. Albright. Philological method in the idantification of anatolian place — names 21 — տես պրոֆ Ա. Խա-չատրյան նոյն էջ 58)։

Հաթեան կայսրութեան ժամանակ երբ արդի Կապադովկիան կը ներկայացնէր «Խաթասանը» Պոնտոս կը կոչուէր «Կիզվատնա» որմէ յե-տոյ ածանցուեցաւ «Կապադովկիա» բառը, որ փոխանակ վերջին ժա-մանակներու մէջ Կապադովկիոյ մասն կազմող Պոնտոսին սեփական անունն ըլլալու, ընդհանուր երկրին անունը դարձաւ։

Բիլաբիլ այս իրողութիւնը կը մեկնէ սա կերպով որ պարս-կա–հելլէնական ժամանակներու մէջ՝ կապադովկիացիները կը բնա-կէին Իրիսի շրջանին մէջ մինչեւ Ալիս, եւ վերջը Արիարատիս Ա.ի օրով միայն անոնք անցան Ալիսի հարաւակողմը (պրոֆ. Ա. Խաչա-տրյան, նոյն, էջ 54) եւ իրենց նոր նուաճած երկրին ալ տուին՝ իրենց նախկին բնակավայրին տուած անունը, զայն ալ անշուշտ նկատելով իրենց երկրին մասը։

Այս մեկնութեամբ կը լուսաբանուի Կիզվատնա անունին թէ շրջափոխութիւնը եւ թէ հաւանական տեղափոխութիւնը դէպի Կա-դովկիա թէ՛ լեզուաբանօրէն եւ թէ՛ աշխարհագրօրէն։

Սակայն նկատելով որ գիտութիւնը իր վերջին եւ անժխտելի խօսքը չէ ըսած, աւելորդ չեմ համարեր Կապադովկիա բառին համար մինչ ցարդ դրուած զանազան մեկնութիւններն ալ ներկայացնել։

Ըստ ոմանց Կապադովկիա տեղագրական անուն մըն էր եւ ոչ թէ ցեղագրական։ Ըստ Benfey-ի, օրինակի համար, այս բառը յառաջ

---

(1) Ինչպէս Վինքլեր (Hugo Winkler), Հոմմել, Հերցֆիլտ, Մէյէր, Հրօզնի (Hrozny), Ֆորրեր (E. Forrer), Վայտներ (E. Weidner), Գարս-տանգ (Y. Garstang), Ալբերդ Կեոցէ։ Այս տեսութեան դէմ եղած է Սիտնէյ Սմիթ (Sidney Smith) որուն յարեցաւ յետոյ յետս ընդդրկու-մով մը Ալբերդ Կեոցէ, սակայն Բիլաբիլ մանրազննին քննութեամբ հերքեց անոնց բոլոր առարկութիւնները (պրոֆ. Ա. Խաչատրյան, Հայ. սեպ. արձ. պատմ. էջ 53-54)։



կուգայ Huaspadakjir Բագրիտերէն բառէն որ կը նշանակէ «երկիր ընտիր երիվարներու»։

Ըստ Hiller-ի, երկիրը եւ ազգը այդ անունը առին կապադովկ կամ կապատօքս (cappadoce կամ կապուտակ) գետին (արդի Թրքաց Տելիհէ-րմաքը) անունէն (Ալիսի կամ Կըզըլ ըրմաքի մէկ օժանդակը) որ ըստ իրեն սիրիական capdac ( = սահման) բառէն կը ծագի։

Ըստ Kiepert-ի (տես leherbuihe des alten geographie) ծանօթ Տուխա (δοῦχα) ազգին սեպագիր արձանագրութիւններէն մէկէն կ'երեւայ թէ Քաթթա-տուխա, այսինքն «երկիր տուխայից» կոչեցին գաւառը դրացի սե-մական ժողովուրդներ։

Եղիշէ Դուրեան կատպա-տուխա (կամ տուհա) այսինքն «կողմն Տուհայց» կը մեկնաբանէ Կապադովկիա բառը, անշուշտ Kiepért-ի հետեւողու-թեամբ։ (տես Պատմութիւն հայ մատենագրութեան, Երուսաղէմ, 1933 էջ 26) եւ Ազգ. Պատմութիւն, Երուսաղէմ, 1934 էջ 31)։

Արդարեւ Դարեհ Վշտասպեանի արձանագրութեանց մէկ (Պեհիս-տուն սիւն 8 § 6) կը կարդացուի Կատպատուքա անունը, որ ըստ Լա-գարտի եւ Քիբերթի, կը նշանակէ «կողմն Տուխայց» (բեւեռագրաց մէջ տուհա) եւ զոր յոյնք փոխեցին Կապադովկիայի։ (Թ. Ռայնախ, Միհրդատ Եւպատոր, էջ 21. ծանօթ. 6)։

Նարհիմ (1) իր կողմէ կ'աւելցնէ թէ Քարոլտիի յիշած Տուխա ազգն տաուխներն (Տայք) են ըստ ամենայն հաւանականութեան եւ կը բնա-կէին Պոնտոսի կողմերը՝ հեռու միւս Տայքէն։ Այս պարագային վերս-տին կը հաստատուի Պոնտոսի հետ առընչութիւնը այս երկրին եւ մանաւանդ անոր անունին։

Լազարդ Կապադովկիա բառը կ'ստուգաբանէ ուրիշ կերպով։ Արձա-նագրութեանց katpatuka-ն առնելով հիմ, կը կարծէ թէ անոր Katpa-ն ասորի բառ մըն է (կատպա կը նշանակէ «ուսք» եւ «կող»)։

Իր կարծիքով Սպիտակ-Ասորիք իրաւամբ հոն ապրած են «բայց ուշ ատեն բաժնուելով եկած» են, մինչ բուն Գոմերը = Գամիրք ծագումով երանեաններ էին։ (տես Ուսումն դասական հայերէնի էջ 239)։

Պարսից այս երկրին տուած Katpatuka կոչումին կցուած էր սա աւանդավէպը որ անշուշտ կարելի չէ իբր ճշմարտութիւն ընդունիլ։

Անոնք կը պատմէին թէ cappodex անունով սատրապ մը որսի մը պահուն Արտաքսերքսեսներէն մէկուն կեանքը փրկած ըլլալուն հա-մար թագաւորը երկիրը իր անունով կոչած է։ (պ. Բարսեղ Օհան-եանի տեղեկութիւն)։

---

(1) Նարհիմ 1890ի եւ 1891ի Ծաղիկներուն մէջ թարգմանաբար ներ-կայացուցած է բրոֆ. Քարոլիտիի «Կապադովկիոյ գաւառին հին լեզուն եւ նորա արդի յունարէն գաւառաբարբառը» խորագրով գործը, ընդարձակ յօդուածաշարքով մը եւ արժէքաւոր դիտողութիւններով։

Նարհիմ կեղծ անունն էր Միհրան Իսպիրեանի (1873-1915) (տես Գր. Հ. Գալուստեան. Մարաշ կամ Գերմանիկ եւ Հերոս Զէյթուն, 1934, Նիւ Եորք, էջ 444 եւ Թէոդիկ Յուշարձան Ապրիլ 11ի էջ 59)։ Սակայն այս յօդուածներուն մէջ յունարէնի հմտութիւն կը տեսնուի որով չափազանց կասկածելի է անոնց իր հեղինակութիւնը ըլլալը։ Ցետոյ երբեք հաւանական չէ որ այդ յօդուածներուն հեղինակը ըլլայ 17 տարեկան պատանի մը։

կարծողներ կան թէ Cappadocia անունն է տեղական դիցուհիի մը որուն անունով կոչուած է երկիրը։

Գ. Բարսեղ Օհաննեան այս տեսութիւնը ամէնէն հաւանականը կը համարէ դրամագիտական տուեալներու վրայ, վասնզի կ'ըսէ թէ կե-սարիոյ դրամներուն վրայ կը գտնուին կնոջ մը պարսպապատ (tourelée) գլուխը։ Արդ, տրուած ըլլալով որ դրամներու վրայ, միշտ հին ա-ւանդութիւնները կը յիշուին, հաւանական է մտածել թէ դիցուհիի մը անունին նուիրուած երկիր մըն էր Կապադովկիա, թէեւ այս տե-սութիւնը կը հերքուի կամ տարակոյսի տակ կը ձգուի նոյնիսկ իր կողմէն քանի որ անմիջապէս կը յարէ թէ «պարսպապատ կնոջ կամ մարդու գլուխ մը, կրնայ դրամագիտութեան մէջ ամրացած քերդաքաղաք մը նշանակել»։

Այս բոլոր տեսութիւնները՝ որոնք աւելի հաւանականութեանց վրայ հիմնուած են, սակայն գոնէ ընդհանուր կերպով համաձայն են աս կէտին մէջ թէ, երկրին այս կոչումը յետնագոյն ժամանակներու մէջ գործածուիլ սկսած է և պարսից տիրապետութեան շրջանին է որ աշխարհագրական այս անունը երեւան եկած է։

Պարսիկները առհասարակ Կապադովկիա անունը կուտային Ալիսի և Եփրատի միջև տարածուած երկրին, զոր Ալիսը կը բաժնէր Փռիւ-գիայէն և Պափլագոնիայէն և Եփրատը՝ Հայաստանէն։

Նշանակելի է որ Հայերը նոյն երկիրը կը ճանչնան երկու անուն-ներով, երբեմն կը կոչեն Կապադովկիա և աւելի յաճախ Գամիրք։

Այս երկրորդ կոչումը ըստ Տաշեանի (Ուսումն դասական հայերէն լեզուի էջ 239) «ապաքէն աղերս ինչ ցուցանէ ընդ «Գոմեր» (Ծն. Ժ. 3) կամ ըստ Ղազարու նոյնինքն իցէ ընդ նմին, եւ ըստ այլոց նորոց քննչաց՝ երկոքին եւս նոյն իցեն ընդ անուան Կիմմերացւոց (Κιμμέριοι) յունաց եւ gimirrai բեւեռագրութեանց»։

Զարմանալի է որ յետնագոյն ժամանակներու մէջ Գամիրք բառը այս կերպարանքով միայն հայոց մէջ պահուած է, վասնզի առ հասա-րակ բոլոր միւս ազգերը կը գործածեն Կապադովկիա կոչումը թէ երկ-րին և թէ ազգին համար։

Եթէ ճշմարիտ է որ «կիմմերացի» անունն է հին ու նոր պատմա-տակներու որոնք բոլոր Փոքր Ասիան և Հայաստանը տակն ու վրայ ըրին, ասիկա կը հաստատէ թէ կիմմերացիներէն մաս մը հաստատ-ուած է Կապադովկիոյ մէջ, ինչպէս Հայաստան։ (Հմմտ. Տաշեան. Ուսումն. էջ 239. Murad, Ararat u. Massis էջ 16)։

Սակայն կիմմերացիք՝ Կապադովկիոյ ամբողջ բնակչութիւնը չէին կրնար ըլլալ այլ անոր մէկ մասը որ եկուոր էր և ոչ բուն բնիկ ժո-ղովուրդը երկրին։ Ասոր համար զարմանալի է որ հայերը՝ այս մաս-նակի բնակչութեան անունով կոչած են ամբողջ երկիրը, ինչ որ բո-լորովին ալ անկարելի չէ, քանի որ յոյներն ալ բնակչութեան մէկ մասին սեմական ըլլալուն համար «Սպիտակ Ասորիք» անունով կը կո-չէին նոյն երկիրը։

«Կիմմեր» սեմական բառ է ըստ Տաշեանի (Ուսումն. էջ 239) և կը նշանակէ «հիւսիսական» և պատշաճօրէն կրնայ տրուած ըլլալ հիւսիսէ արշաւող այս ժողովրդեան, որուն այս կոչումը Գամիրք ձեւով Հայաս-տանի դրացի երկրի մը սեփականուած ըլլալը մեր նախնեաց կողմէ, որքան որ ալ ըլլայ լուսաբանութեան կարօտ, բոլորովին անմեկնելի չէ, ինչպէս տեսնուեցաւ, քանի որ երկրին բնակչութեան բաղկացու-ցիչ մասերէն մին կը կազմէին Կիմմեր = Գամիրք։

---



# Բ. ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՆԵՐՈՒՆ ԵՒ ՀԱՅԵՐԸ ԱՐԳԷՈՍԻ ՇՈՒՐՋԸ

---

## Ա.

## ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԿԱՄ ԳԱՄԻՐՔ ԱՆՅԻՇԱՏԱԿ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԷ ՄԻՆՉԵՒ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

---

Կապադովկիոյ այն մասը ուր կը կանգնի Արգէոս լեռը, համեմա-տաբար բարձր քաղաքակրթութիւն մը ունեցած է և քրիստոնէական կեանքը հոս իր ամենամեծ զարգացումը տեսած է, առաջին դարե-րուն (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 21)

Այս աշխարհամասին պատմութիւնը՝ ինչպէս բովանդակ Փոքր Ասիոյ, կը կորսուի հնագոյն անցեալի մշուշին մէջ։

Անյայտ է մեզի թէ հոն անյիշատակ ու հնագոյն ժամանակներու մէջ ի՞նչ ցեղեր ապրած են, ի՞նչ ժողովուրդներ անկէ անցեր են, ի՞նչ կեանք ունեցած են, և ի՞նչպէս անհետացած են։

Մերձաւոր Ասիա ու մասնաւորապէս Փոքր Ասիա, այն գլխաւոր պատմական թատերավայրն է, ուր մարդկութիւնը իր ամէնէն երկար դիւցազներգութիւններն ու ողբերգութիւնները բեմադրած է։

Հո՛ն բազմաթիւ այլազան ժողովուրդներ դարեր շարունակ զար-նուեցան իրարու հետ, անկէ անցան շարան շարան կարաւանները ցեղերու, որոնք Կեդրոնական Ասիան անկարող էր այլեւս զսպել իր ընդարձակ տափաստաններուն մէջ։

Ու այդ բոլոր անցորդներէն և նոր տէրերէն Փոքր Ասիա ժառան-

գեց վայրավատին բեկորներ, ինչպէս նաև յաղթ զանգուածներ, որոնք մասամբ գիրկընդխառնուելով իրարու հետ՝ ընկերական հաւաքոյթին մէջ կազմեցին նոր մարմին մը, ուր մարդախօսին աչքերը հազիւ թէ կրնան նշմարել խառնուրդի երակները։ (Գ. Էսապալեան, «Հայերը մարդախօսական տեսակէտէ». ՀԱ. 1934 էջ 415)։

Ինչպէս արդէն տեսնուեցաւ Փոքր Ասիա աշխարհի բնակուած մասերուն հնագոյններէն մին է, քանի որ հոն է որ գտնուած են մարդկային քաղաքակրթութեան սկզբնական հետքերը և բեկորները։

Հետեւաբար վաղընջական ժամանակներու մէջ իսկ Արգէոսի շուրջը մարդերէ բնակուած պէտք է ըլլայ, հաւանօրէն մեզի անծանօթ պայմաններու մէջ, քանի որ գիտուններու կողմէ ցարդ կատարուած քննութիւններ և հետազօտութիւններ միայն թոյլ կուտան կազմելու համար Քրս.է առաջ Դ. հազարամեակէն սկսեալ պատմութիւն մը, որուն առաջին հազարամեակին համար ձեռք բերուած արդիւնքները այնքան խառնակ ու հատակոտոր են որ կարելի չէ վերջնական եզրակացութեան մը հասնիլ և շարայարեալ պատմութիւն մը կազմել, երբ մանաւանդ խնդիրը կը դառնայ աշխարհամասի մը մէկ սահմանափակ շրջանին վրայ, ինչպէս է այս պարագային Փոքր Ասիոյ մեզի շահագրգռող շրջանակը, որ Արգէոսի շուրջը կը տարածուի։

Առով հանդերձ պիտի ջանանք ներկայացնել երկրին կեանքը, վաղընջական ժամանակներէ սկսեալ մինչև Մեծն Աղեքսանդրի տիրապետութիւնը, զայն շրջաններու բաժնելով։

## Ա.

## ՆԱԽԱՀԱԹԵԱՆ ՇՐՋԱՆ

### (Հնագոյն ժամանակներէ մինչեւ 2000 Քր.Է առաջ)

Նախապատմական շրջաններուն այս երկրին մէջ ապրող ժողովուրդներուն ցեղային նկարագրին և քաղաքական կազմին վրայ մեր ունեցած ծանօթութիւնները շատ քիչ են(1)։

Ապացուցուած է միայն որ շատ հին ժամանակներու մէջ ամբողջ Փոքր Ասիան, Սուրիան, Պոնտոսի (Սեւ Ծովի) հարաւային կողմերը,

(1) Այս հնագոյն ժամանակամիջոցին ուսումնասիրութեան նուիրուած երկու խիստ արժէքաւոր և ամենավերջին հետազօտութեանց և պեղումներու լոյսին տակ պատրաստուած աշխատութիւններ են Dr. G. Contenau-ի «La Civilisation des Hittites et des Mitaniens» (1934), և պ. Աստ. Խաչատրյանի Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն. հիմնված արձանագրական տեքստերի վրայ շուրջ 3000-600 նախ քան մեր թ., հրատարակութիւն Մելքոնեան ֆոնտի, Երեւան, 1933. որոնցմէ մեծապէս օգտուեցայ։ Հոս դիտել տալ աւելորդ չըլլայ թէ երկու գիտունները համաձայն չեն ինչ ինչ կէտերու մէջ և տարբեր ըմբռնումներ ունին զանազան հարցերու մասին։

Նոյնպէս օգտուած եմ Տոք. Նշան Մարտիրոսեանէն՝ Բրակայի համալսարանի դասախօսէն, որուն վիճակած էր Հայ ազգը, անոր ծագումը, լեզուն, պատմութիւնը, գիրը, գրականութիւնը, կրօնքն ու արուեստը ներկայացնել 1932ին հրատարակուած Չեխ համայնագի-



Հայաստան, Կովկասը մինչև Կասպից ծով և Իրանի սարահարթը, ինչպէս նաև Մետիան (=Մարաստան), թերեւս նաև Ելամը, բնակուած էին հաւանօրէն մէկ ընդհանուր ծագում ունեցող, իրարու հետ ցեղակից կամ քոյր ազգերով, որոնք բազմաթիւ բաժանումներ ունէին։ (Լէօ, Հայոց Պատմություն էջ 211)։

Անոնք ունէին գիտութեան ցարդ անծանօթ հնագոյն ինքնուրոյն քաղաքակրթութիւն մը որ ըստ Էրնէսթ Հէրցֆէլտի նորագոյն պեղումներուն, կը տարածուէր Ալիսի ափերէն և Կովկասէն՝ Հայաստանի և Միջագետքի ճամբով ամբողջ Պարսկաստան և Աֆղանիստան, մինչև Ինտոս գետի հովիտը, (տես Արշակ Սաֆրաստեան. Հայ ցեղի ծագման խնդիրը. ԲԱԶՄԱՎԷՊ 1931 էջ 111)։

«Յամենայն դէպս աւելի քան 4000 տարի Քր.է առաջ Հին Քարային ցարդ անստոյգ մի շրջանի Հայաստան ու Կովկաս կը պարունակէին տարրական քաղաքակրթութիւն ունեցող մի ժողովուրդ, որ գիտէր շինել քարէ զէնքեր և գործիքներ, մինչդեռ սումերական կեդրոնները, Շօշ, Պերսեպոլիս, Նինուէ եւայլն ցարդ տուած չեն միեւնոյն հնութիւն ունեցող մշակոյթի ոեւէ հետք» (Արշակ Սաֆրաստեան, ԲԶՄՊ. 1931 էջ 212)։

Նոր Քարային դարաշրջանի (4000–2500 Քր.է առաջ) այդ մշակոյթը՝ իր առաջին ապացոյցները տուած է միմիայն վերջին քանի մը տարիներուն մէջ և պատահաբար(2)։ (Ա. Սաֆրաստեան ԲԶՄՊ. 1931, էջ 111)։

Այս գիւտերը ի վիճակի կը դնեն այսօր գիտութիւնը հասնելու սա եզրակացութեան թէ Նոր Քարային դարաշրջանի սկիզբը, մօտ

տարանին (Ottuv Naucny Slovnik) մէջ։ Ան իր իսկ կողմէ կատարուած թարգմանութեամբ մը, իր ուսումնասիրութիւնը հրատարակած էր Արեւելք օրաթերթին մէջ [տես թ. 499 (12 մարտ 1933), 500 (13 մարտ 1933), 501 (14 մարտ 1933), 505 (18 մարտ 1933), 506 (19 մարտ 1933), 507 (20 մարտ 1933), 508 (21 մարտ 1933), 509 (22 մարտ 1933), 510 (23 մարտ 1933)] «Ի՞նչպէս լուծեց Չեխ արեւելագէտը հիթիթերէնը եւ ի՞նչ արդիւնք ձեռք բերուեցան» խորագրով։

Նոյնպէս այս հնագոյն ժամանակներու համար մեծ նպաստ մը եղաւ Հ. Յակոբոս Տաշեան, բազմահմուտ Մխիթարեանին Հանդէս Ամսօրեայի (տես 1931-1933 տարիները) Հաթեր եւ Ուրարտեանք ուսումնասիրութիւնը, ուր ճոխագոյն աղբիւրներով և բազմաթիւ գիտական հրատարակութեանց ուսումնասիրութեամբ կը յայտնէր իր վերջին եզրակացութիւնները՝ լի հմտութեամբ և խորաթափանց հայեցողութեամբ ու քննադատական ակնարկներով։ Անոնք նպատակ ունէին լրացնել իր հոյակապ և մեծ գործը՝ «Ուսումն դասական հայ լեզուի»։ Դժբախտաբար իր մահը թոյլ չտուաւ աւարտելու այս աշխատութիւնը։

Օգտուած եմ նաև այս յօդուածաշարքէն, ինչպէս պիտի տեսնուի։

(2) Ա. Քալանդարի գիւտերը Սեւանայ լիճին եզերքը, Ջախարովի և Մեսղանխովի գիւտերը Ճորոխի ստորին հովիտին մէջ (Վրաստան), Հերցֆէլտի գիւտերը Պերսեպոլիսի և Սուսա Բ.ի մէջ, անգլիացի Մարշըլի գիւտերը Սինտի (Հնդկաստան) մէջ յայտ բերած են այդ հնագոյն մշակոյթին մի քանի հետքերը։

4000 տարի առաջ Քրիստոսէ, Մերձաւոր Ասիոյ մէջ կը տիրէր իր լայն գիծերուն մէջ միակերպ և քիչ շատ զարգացած մշակոյթ ունեցող ցեղ մը, և Նախասիոյ մէջ պատմական պայմանները ստեղծած էին, այն հեռաւոր հնութեան մէջ համասեռ, միատարր քաղաքակրթութիւն մը, որ բոլոր ժողովուրդներունն էր և առանձինն ոչ ոքի։ (պրոֆ. Ա. Խաչատրեան, Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմութիւն էջ 441)։

«Մարդ կը զարմանայ, կ'ըսէ նա, այն արագութեան վրայ — հազարաւոր տարիների խաւար ու դանդաղ աշխատանքէն յետոյ — որով կ'ստեղծուի քաղաքակիրթ համայնքներ: Մարդ մէկ անգամէն ինքզինքը կը գտնէ կատարեալ ինքնագիտակ քաղաքակրթութեան եւ դիւանագիտութեան մը շրջանին մէջ»:

Անյայտ ծագումէ մը, երբ հազիւ հնարաւոր կը դառնայ ճշդորոշել իրենց դիմագիծը, մէկ անգամէն մեր առջեւը կը տեսնենք կազմակերպուած պետութիւններ՝ իրենց բոլոր յարակից մասերով։

Հոն կը տեսնենք պետական կազմ իր իշխանով կամ թագաւորով, զօրք և զինուորական կազմած, դատարան ու դատ, դիւանագիտական յարաբերութիւն՝ որոշ օրէնքներով սահմանաւորուած, հասարակական կեանք և դասակարգեր, առեւտրական աշխոյժ երթեւեկութիւն, արհեստներ և ճարտարապետութիւն եւայլն, մէկ խօսքով այն ամէնը՝ ինչ որ կարեւոր է հասարակական կեանք հաստատելու և ստեղծագործ աշխատանք կատարելու համար։ (Հայաստանի սեպ. շրջ. պատմ. էջ 441):

Այս ժողովուրդներէն ամէն մէկը երկար ժամանակ ամբողջովին կամ մասամբ ապրած և քաղաքակրթական աշխատանք կատարած են Մերձաւոր Ասիոյ մէջ և մեծ մասամբ նոյն աշխարհամասին մէջ անհետացած են ձուլուելով և իրենց ժառանգութիւնը յաջորդներուն կտակելով։

Հաւասարապէս նոյն քաղաքակրթութեան և արուեստին, ու կրօնի ստեղծագործութեան մասնակցող այս ժողովուրդներու պատմութիւնը կորսուած է նախապատմական խաւարին մէջ, և իրենց անցեալին ու մշակոյթին մասին ձեռք բերուած արդիւնքները տակաւին չունին լիակատար հանգամանք մը և չեն առած վերջնական դրոշմ, այնպէս որ կը մնան բաւական անորոշութիւններ և վիճելի կէտեր։

Պրոֆ. Խաչատուրեան կ'ըսէ թէ «այս նախնագոյն կամ տեղացի համարուած ժողովուրդը դեռ եւս չունի ընդհանուր գիտուններէն ընդունուած իր բուն ու միակ անունը, ոմանք անուանում են Խէթ կամ Խէթիտ, ուրիշներ Ազիանիք (կամ Փոքրասիական), ոմանք նախընտրում են Ալորոդեանը, նորերս ուզում են աւելի գործածական դարձնել Խարրի կամ Խուրրի ու Միտանի անունները, ոմանք Սուբարի եւ վերջապէս prof. Մառ՝ Յաբեթեան»։

Պրոֆ. Ա. Խաչատուրեան կը յարէ թէ «մեզ համար թէեւ իսկապէս էական նշանակութիւն չունի թէ որոնցից որն է աւելի ճիշդը, բայց եւ այնպէս պէտք է ցոյց տալ իւրաքանչիւրի գործածութեան անպատեհութիւնը» և իսկապէս մի առ մի զանոնք կ'առնէ քննութեան (տես Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն. էջ 72–73) և ինքն կը յանգի այն եզրակացութեան թէ պէտք է գործածել Սուբարի = Շուբրիա անունը որը «Արդ. Ունգնատն ու Եդ. Մէյեր, Սմիթ. եւ այժմ Ֆորրեր, Ոպենհայմ եւ ուրիշներ հին Բաբելոնացիներից առնելով գործածում են եւ բխում է Արեւմտեան Եւ-



րոպայի արեւելագէտների կողմից հետզհետէ ընդունելութեան է արժանանում» (Նոյն էջ 73)։

Իւրաքանչիւրը այդ ժողովուրդներուն՝ որոնք գոնէ Դ. հազարամեակին վերջերն արդէն գրաւած էին՝ իբր իրենց բնակավայր՝ Մերձաւոր Ասիոյ զանազան աշխարհները, հաւանօրէն ունէին իրենց նախկին հայրենիքը կամ բնակութիւնը։

Այս ժողովուրդները նաև այն ժամանակ՝ ուր երեւան կուգան, լիակատար ազգեր են, արդէն խառնուրդներով և այնպիսի զարգացած և այլակերպած լեզուներով, որոնք այլեւս իրարու հետ կապ չունին։

Այսպէս այս շրջանի Մերձաւոր Արեւելքի մէջ ապրող գլխաւոր ազգերէն անոնք որոնք նոյն կամ նման ցեղային ընդհանուր նկարագիր մը ունին, յիշենք Խէթիացիքը(1), (կամ Նախահաթերը), Հուրրիները, (խուրրիները), Սումերները եւ Ելամացիները, որոնց լեզուները իրարու հետ աղերս չունին, հակառակ իրենց ցեղային ընդհանուր նկարագիրին, որ ոչ նուազ այլայլած է ցեղախառնումներով։

Սումերները կամ Նախնագոյն Արիները(2), — որոնք նկատուած են աշխարհի մէջ առաջին քաղաքակիրթ ժողովուրդը—կարճագլուխ(3)

---

(1) Տոքթ. Նշան Մարտիրոսեան իր ուսումնասիրութեան մէջ Մերձաւոր Ասիոյ հնագոյն ժողովրդեան կուտայ «Խաթիացի» կոչումը իբր համապատասխան Hattili բառին։ Իսկ երկրորդ խաւը կը սիրէ կոչել Հիթիդ։

Հ. Յակոբոս վրդ. Տաշեան, առաջիններուն համար կը գործածէ Նախահաթեր (իբր համապատասխան Ha-ad-ti-li (š)ի և երկրորդներուն համար Հաթեր բացատրութիւնը։ (ՀԱ. 1932 էջ 166)։

Մասնաւորապէս հմուտ Մխիթարեանը Հիթիդ ձեւը հայերէնի համար անընդունելի կը համարէ, իր տեսութիւնը գեղեցկօրէն պատճառաբանելով և լաւագոյն կը համարէ Հաթ կամ Խաթ գործածել գերմաներէն՝ Hethiter և լատինական ազգերէ Hittite անունով ճանչցուած ազգին համար։ (տես ՀԱ. 1932 էջ 58)։ Նախընտրած եմ հետեւիլ որչափ հնար եղաւ բազմահմուտ Մխիթարեանին։

(2) Անոնք ունէին դասական յօնքերու տիպը։ Իրենց հերոսները և հերոսուհիները նկարագրուած են իբր բարձրահասակ, գեղեցիկ ու ոսկեհեր և պատկերացուած են, իրենց քանդակներուն մէջ իբր լայնաճակատ։

Սումերներու կամ Նախնագոյն Արիներու միջոցաւ է որ Եգիպտոս ներմուծուեցաւ քաղաքակրթութիւնը Միջագետքէն Սումեր կայսրերու միջոցաւ, «նախահարստութեանց թագաւորներու» օրով, այսինքն շուրջ 2780 տարի առաջ կամ քիչ մըն ալ կանուխ մեր թուականէն։ (Հմմտ. L. A. Waddelի Egyptian Civilization its Sumerian origin and real chronology գործը, որ յեղաշրջած է հին պատմութիւնը։ (տես Հայաստանի սեպ. շրջանի պատմութիւն էջ 357)։

(3) Մարդաբանական քննութեանց համաձայն երեք տիրապետող տիպեր կը նկատուին, Սպիտակ կամ Կովկասեան ցեղին պատկանող.

Ա.— Եւրոպական մարդ կամ ցեղ (Homo Europaeus) խարտեաշ և եր-

եւ մեծառունգն են, և ընդհանրապէս նոյն կամ նման յայտանիշեր ունին Նախահայթերը և Հուրրիները, բայց արդէն կարեւոր տարբերութիւններով։

Սումերացիք ունին կարճագլուխ նկարագիր մը, բայց բացի աւելի նեղ քիթէ՝ նաև ցցուն այտոսկր և թեթև առիւծ աչք, հետեւաբար անշուշտ հին խառնուրդ մը ունեցած են նման յատկութեամբ ուէ տոհմի մը հետ։

Ելամացիք չունին այս վերջին խառնուրդը բայց անոր փոխարէն հոն խառնուրդ մը եղած է թխագոյն դրաւիդեան ցեղին հետ՝ որ մինչև Կովկաս ալ տարածուած էր։

Պատմական արշալոյսի առաջին ճառագայթներու տակ արդէն կ՚ուրագծուին այս մի քանի մարդկային խմբումներու դիմագիծերը և կ՚որոշուին անոնց ժամանակագրական յաջորդականութիւնը։

Այս ժողովուրդներուն մէջ առաջին տեղը կը գրաւէր, ինչ չափով որ ցարդ յայտնուած յիշատակարանները հնարաւոր կը դարձնեն որոշել, Նախասիայի հնագոյն կամ բնիկ ոչ հնդեւրոպական և ոչ սեմական պատմական ժողովուրդը, որ իր մտաւոր ու նիւթական մշակոյթով ու մարմնական՝ մարդաբանական տիպարով ամբողջական միութիւն մը կը կազմէր և կը տիրակալէր նախ քան Հնդեւրոպական ժողովուրդներու ներարշաւը, արեւելեան Փոքր Ասիոյ, Արմենիայի, հիւսիսային Միջագետքի, Տաւրոսի և Ելամի։ (Հմմտ. Բրոֆ. Խաչատուրեան, Հայաստանի սեպ. արձանի պատմ. էջ 72–73)։

Ամէն պարագայի մէջ ընդհանուր տիպարը որ Մերձաւոր Ասիոյ մէջ տիրող էր և միակը այս տարածութեան մէջ իբր հնագոյն բնակչութիւն՝ անյիշատակ ժամանակներէն ի վեր, գիտուններու կողմէ

---

կարագլուխ ցեղ, որ կը բնակի Եւրոպայի հիւսիս և հիւսիս–արեւմուտքը (Սկանտինաւեանք, Գերմանացիներ և Անգլիացիներ)։

Բ.— Միջերկրականեան ցեղ (Homo Mediterraneus), թխագոյն երկարագլուխ ցեղերը հարաւային և հարաւ–արեւմտեան Եւրոպայի։

Գ.— Ալպեան ցեղ (Homo Alpinus) թխագոյն կարճագլուխ ցեղերը, (Դինարիք, Ալպեանց և հարաւ–արեւելեան Եւրոպայի բնակիչները) որոնց կապակցութիւնները դեռ այնչափ լաւ ուսումնասիրուած չեն որչափ առաջին երկուքին։ (Ա. Սաֆրաստեան ԲՋՄ. 1931 էջ 427)։

Սերճի (Giuseppe Sergi «Europa», 1905, Torino) հաստատած է թէ հարաւային Եւրոպայի թխամորթ երկարագլուխ ցեղերը ունէին Ափրիկեան ծագում և թէ այդ մարզին երկարագլխակերպները (brachiod) եկած էին Փոքր Ասիայէն։ (տես նոյն)։

Պասկերը, Ետրուսկացիները շատերէն նկատուած էին իբր Կովկասցիներ և Փոքր Ասիացիներ (նոյն)։

Հայ գանկերով զբաղած է գիտուն մը Վ. Bunak որ իր «Հայ գանկեր» (Crania Armenica) երկասիրութեան մէջ հասած է այն եզրակացութեան թէ կարճագլուխ Հայերն ալ տարբերակ մը միայն կը կազմեն եւրոպական կարճագլուխներու (այսինքն Դինարեանք եւայլն) և կապ չունին մոնղոլատիպերու (Mongoloïdes) ասիական կարճագլուխներուն հետ։ Ասիկա շատ կարեւոր կէտ մըն է Հայոց մարդախօսութեան համար։ (տես ՀԱ. 1932 էջ 432)։



վերը նշանակուած զանազան անուններով որակուած այն այլանդակ տիպարն է զոր կը ներկայացնեն «Հաթեան» կամ անոնց ընծայուած բազմաթիւ քանդակներն ու յիշատակարանները, բոլոր այն երկիրներուն մէջ, ուր Հաթերն ոտք դրած են պատմութեան ընթացքին։

Բայց այս Հաթեան կամ Նախահաթեան տիպարն ալ նշաններ ունի թէ նոյնպէս խառնուրդի մը ենթարկուած է։

Սեւ Ծովէն մինչև Միջերկրական ընդարձակ տարածութեան մէջ — մանաւանդ եթէ Կապադովկիոյ ու Կիլիկիոյ հետ առնենք նաև հիւսիսային Ասորիքը— ի հարկէ միակ ժողովուրդ մը չէր և ապահովապէս ո՛չ ալ միակ ցեղ մը որ կը տիրակալէր, քանի որ նաև երկարագլուխներ կը գտնուէին այդ շրջանակին մէջ։

Հին ժողովուրդներէն կամ աւելի ճիշդ ազգերէն և ո՛չ մին նախնական ժողովուրդ էր, այլ ունեցած էր արդէն երկար զարգացում և մինչև անգամ այն ցեղը (և ցեղերը) կը վերաբերէին արդէն ցեղերու վերջին փուլին կամ «խառնածեւ ցեղերու» շարքին, ինչպէս կը կոչէ զանոնք նշանաւոր մարդախօս մը բրոֆ. Մէնգհին (Oswald Menghin), Վիեննայի Համալսարանին Վաղահնախօսութեան (Paläarchäologie) ուսուցչապետը, իր «Տիեզերական պատմութիւն քարադարեան ժամանակի» կոթողական գործին մէջ(1)։ (Հ. Տաշեան, Հայեր եւ Ուրարտեանք, ՀԱ. 1932 էջ 401–402)։

Ըստ Բրոֆ. Մէնգհինի խառնածեւ ցեղերու բաժանման կը վերաբերին յաջորդ խումբերը։ (տես ՀԱ. 1932 էջ 417-418)։

1. Հիւսիսականք (Nordide) և այն Միջերկրական ցեղը, Նախաալպեական ցեղը, Արեւելեան ցեղը, Սարմատական ցեղը՝ իբր ենթահիւսիսական։

2. Տաւրոսականք (Tauride) և այն՝ գլխաւորաբար «Յառաջակողման

---

(1) Այս գիտունին տեսութեամբ մարդկային հնագոյն ցեղերը կը կոչուին Այգածեւ (Eomorphe) ցեղեր, այսինքն թզուկներ կամ գաճաճներ, թզկազգիք, խառնաթզկազգիք, անտառաբնակք և այլն։

Ասոնց կը յաջորդեն Նախածեւ (protomorphe) ցեղերը որոնց կը վերաբերին մարդ Հայտելբերգեան, մարդ Նախածին (Home primigenius) Կրոսեր-Նախաձեւեր, Եամանազգիք, Եսկիմացիք, Նախամոնղոլականք և այլն։

Երրորդ խումբն է Հնածեւ (Archimorphe) ցեղերը, որուն կը պատկանին Եւրոպազգիք (որուն կը պատկանին վաղահնախօսական ցեղեր, այն է Կրոմանեօն և Շանսըլանդ) և Սեւազգիք (որուն կը պատկանին խափշիկներ և այլն) և Սիբերականք։

Չորրորդն է փոխածեւ (Metamorphe) ցեղեր որուն մաս կը կազմեն Հնդկական=Եթովպական ցեղատիպարը որուն կը վերաբերի բուն հնդկական ցեղը (Indide) այն է՝ գլխաւորաբար Դրաւիտականը և երկրորդ Պալաունգեանը (Palaungide) յետսակողման Հնդկաստանի մէջ, Մոնխմեր ազգեր, Հարաւ–Ասիականք և վերջապէս Ալդայականք, որոնցմէ են արդի Թուրք-Մոնղոլական ժողովուրդները և Սամոյիտները։

Վերջապէս կուգան խառնածեւ ցեղերը (Mixomorphe Rassen) մեծ բաժանումը, որուն կը պատկանէին Փոքր Ասիոյ բնիկները, ինչպէս ըսուեցաւ։ (տես ՀԱ. 1932 էջ 416–417)։

Ասիոյ (Փոքրասիական) *ցեղը, յաճախ կոչուած նաև* Հայատիպ (Armenoïde), Կովկասեան *կամ* Հաթեան *ցեղ» — դարձեալ* Դինարեան *ցեղը, որուն հետ կը կցուի Նախապատմական ցեղը «Զանգակաձև Գաւաթի» և նոյնպէս* Ալպեան ցեղը։

3, Տուրանեանք (Turanide) *այն է* Շանեան (Shanide) *ցեղը, յետսա-կազմեան Հնդկաստանի մէջ և* Ճենական (Sinide) *ցեղը, դարձեալ* Պոլինեզիոյ *կամ* Ովկիանիոյ *ցեղը* (կրտսեր Մալեայեան *ցեղը*), *նոյնպէս* Նուպիացիք *և վերջապէս* Ամերիկայի *նախկին բնակիչները։ Ուրեմն բրոֆ. Մէնգհին խառնաձև ցեղերու երեք բաժանումներէն* Տաւրոսականին *մէջ կը դասէր այն ժողովուրդը որ Քս.է* 4000 *տարի առաջ Փոքր Ասիոյ մէջ կ'ապրէր։*

*Վիէննայի համալսարանի վաղահնախօսութեան ուսուցչապետին համաձայն են Ֆելիքս Ֆօն Լուշանի*(1), *Ռէխի, Սպայզէրի պէս ցեղաբաններ որոնց տեսութեամբ այս ժողովուրդը հնդեւրոպական կամ արիական ցեղէն չէր, այլ* Տաւրոսեան (Homstauricus) *կամ այլ կոչումներով «համափոքրասիական» «հաթատիպ»* (hethitoid), *«հայատիպ»* (arménoid), *«Ուրարտեան» (=Արարատեան) կոչուած ցեղին կը պատկանէր։ (Տես Տօքթ. Նշան Մարտիրոսեան,* Արեւելք *թ.* 500, 13 *մարտ* 1933 *և բրոֆ. Խաչատուրեան,* Հայաստանի սեպ: գրչ. պատմ. *էջ* 72)։

*Փոքր Ասիոյ հնագոյն բնակչութեան մեծագոյն մասը ըստ Ա. Սպայզէրի (տես իր* The basic population of the Near East = Մօտաւոր Արեւելքի հնագոյն բնակչութիւնը *գործը) կը պատկանէր ինքնայատուկ ցեղի մը զոր ըստ բրոֆ. Ն. Մառի «Յաբեթական» կը կոչուէր։ Սպայ-*

(1) *Ֆելիքս Ֆօն Լուշան* (Felix von Luschan) *գլխաւոր դէմքն է որ Փոքր Ասիական ամենահին ցեղախօսական տիպարը կոչած է* Armenoid (=*Հայատիպ) և յաջողած է* 1908*էն սկսեալ մարդաբանական միջազգային բառագանձին մէջ ներմուծել այս կոչումը։ (տես Ա. Սաֆրաստեան ԲՋՄԳ.* 1931 *էջ* 426)։ *Ըստ Ֆօն Լուշանի «Արմենոյիտ» ցեղին կը պատկանին Կովկասէն մինչև Եգէական և Պաղեստին բնակող ժողովուրդներու հնագոյն խաւը և Դինարիք ցեղերը արեւելեան Ալպեանց և հարաւ արեւելեան Եւրոպայի մէջ, Թիրոլցիներ, Սերպեր եւայլն։ Ֆօն Լուշան, կը կարծէ թէ գրեթէ հայ ցեղն է որ «հակառակ իր բազմադիմի և յարափոփոխ օտար տիրապետութեանց, զարմանալիօրէն պահպանած է իր նմանածին* (homgène) *ֆիզիքական յատկանիշերը. հազարաւոր տարիներէ ի վեր անոնք (Հայերը) հազիւ թէ փոխուած են»։* (Felix von Luschan, Völker, Rassen, Sprachen *Պէրլին* 1922 *էջ* 142 *տես ԲՋՄԳ.* 1931 *էջ* 427)։ *Ֆօն Լուշանի տեսութիւնը ընդունած է նաև Շանդր* (E. Chantre. Recherches anthropologiques dans l'Asie Occidentale. Archives du Musée d'histoire naturelle de Lyon t. IV. Lyon. 1895 *էջ* 260)։

*Ենսէն և Գադլի եւս Ֆօն Լուշանի հետ համաձայն յենուելով՝ Հաթեան քանդակներու յայտաբերած դիմագիծութեան և ներկայ հայկական տիրապետող ֆիզիքական տիպի նմանութեան վրայ, հայերը ուղղակի սերունդը կը նկատեն Հաթերէն առաջ Փոքր Ասիոյ մէջ իշխող ցեղին, Կրէչմըր* (Paul Kretschmer) *և այլք* Հաթ *բառէն ածանցուած կը նկա-*



*զէր ինքն ալ համաձայն Ն. Մառի նոյն կոչումը կուտայ անոնց։ (տես Տօքթ. Նշան Մարտիրոսեանի յօդուածաշարք* Արեւելք *թ.* 505, 18 *մարտ* 1933)։

*Սակայն բրոֆ. Մառի «Յաբեթական» տեսութիւնը կը մնայ խնդրական որչափ որ ալ բրոֆ. Մէնգհին սկեպտիկ ըլլայ Փոքր Ասիական ծանօթ լեզուները կովկասեան (իմա վրական) հռչակելու փորձերու մասին, և անվարան կովկասեան կարհագլուխները Տաւրոսեան ցեղին մէջ դասած ըլլայ և այսպէս Յաբեթականին և Փոքր Ասիականին միջև առնչութիւն մը ստեղծած, (Տաշեան ՀԱ.* 1932 *էջ* 431 – 432)։

*Տաւրոսեան կոչումը ի հարկէ աւելի ընդհանուր անուանակոչում մըն է և այս անունին տակ կ'ամփոփուին քանի մը ցեղեր՝ որոնց կորիզը Տաւրոսեան լեռներուն մէջ էր, (Հ. Տաշեան, ՀԱ.* 1932, *էջ* 430)։

*Անունի հարցը առկախ ձգելով, անժխտելի է որ Փոքր Ասիոյ և Արմենիոյ մէջ կ'ապրէր նախնագոյն բնիկ ժողովուրդ մը, առանձնայատուկ ցեղային նկարագիրով մը։ Բրօֆ. Հրոզնի կ'ըսէ թէ* «պէտք է ենթադրենք որ, եթէ հնդեւրոպացի Հայերը շուրջ Քս.է 2000 տարի առաջ խուժեցին Փոքր Ասիա, անոնք այնտեղ գտան տեղական ժողովուրդ մը, զոր նուաճե-

*տեն* Հայ *ցեղանունը և անկէ կը հետեւցնեն թէ Հայ ցեղը, իր անունը և ֆիզիքական դիմագծութիւնը հարկադրած է ամբողջ աշխարհամասի մը (Ա. Սաֆրաստեան ԲՋՄԳ.* 1931 *էջ* 426 – 427)։

*Արշակ Սաֆրաստեան իբր եզրակացութիւն կ'ըսէ թէ «այժմ ո՛չ մի լուրջ գիտնական չի կասկածիր «Արմենոյիտ» հնագոյն խաւի մարդաբանական կառուցուածքի և յամենայն դէպս, իբր «Արմենոյիտ» որակուած և ֆիզիքական որոշ դիմագծութիւն ունեցող այդ տիպի Փոքր Ասիոյ հնագոյն խաւը լինելու մասին» (ԲՋՄԳ.* 1931 *էջ* 428)։ *Տես այս մասին նաև Գ. Խապալեանի ուսումնասիրութիւնը* (Հայերը մարդախօսական տեսակէտէ *ՀԱ.* 1934 *էջ* 416)։

*Անշուշտ ինչպէս կը շեշտէ Սաֆրաստեան այս բառը զուտ մարդաբանական բացատրութիւն մըն էր առանց պատմական բովանդակութեան և Նոր Քարային ժամանակամիջոցներուն Փոքր Ասիա և մերձասիական երկիրներու մէջ ապրող բնիկները ապահովաբար ինքզինքնին «Արմէն» չէին անուաներ։ Հայ գիտնական մը բրօֆ. Մինասեան, «Հայատիպ» ցեղին վարկածը իր ամենալայն իմաստով և ընդարձակութեամբ կը մշակէ տարիներէ ի վեր մեր «բնիկ նախնիքը» ստեղծիչը ցոյց տալով բոլոր քաղաքակրթութեանց։ Իր տեսութիւնները տակաւին չունին գէթ գիտական աշխարհին համար վերջնական դրոշմ և կը մնան վիճելի։*

*Հ. Յակոբոս Տաշեան անոնց անդրադարձած էր իր ծանօթ յօդուածաշարքին մէջ, առանց համաձայն ըլլալու այն եզրակացութիւններուն որոնց կը հասնի բրօֆ. Մինասեան։ Վարկածային այս տեսութիւնները որքան որ ալ մեր ազգային ինքնասիրութիւնը շոյելու հանգամանք ունին և մեր հպարտութիւնը կը գգուեն, իրենց տակաւին երկբայելի և չափազանց անհատական հանգամանքին համար չեն կրնար իբր վերջնական վճիռներ ներկայացուիլ, թէև հանգիտութիւններ և նմանութիւններ ունենան ուրիշ զանազան գիտուններու տեսութեանց հետ։*

ցին, եւ աւելի ուշ՝ անոնց հետ խառնուեցան: «Հաթ» ցեղը՝ մեծ քիթով,.. «արմենոյիդ» ցեղը մասնաւորաբար նկարագրուած է մարդաբան Ֆոն Լուշանի կողմէն, անկասկած ամէնէն առաջ Փոքր Ասիոյ այն բնածին ժողովուրդն է, որ Հաթեան արձանագրութիւններուն մէջ Chattit = Խաթ անուանուած է: Այս մեծ քիթով ժողովուրդը կը գտնենք նոյնպէս Սիւրիոյ, Պաղեստինի, Միջագետքի, Արմենիայի եւ Պարսկաստանի մէջ: Այս երկրին ամենահին ժողովուրդն է ան: Աւելի ուշ ժամանակներու մէջ ուրիշ ժողովուրդներ ներխուժեցին այս երկիրներն ու ձուլուեցան այս մեծ քիթով ժողովուրդին հետ. այս է պատճառը, որ այս ցեղը խորին հնութենէն սկսած՝ խօսած է ու կը խօսի շատ ու տարբեր լեզուներով: Մեծ քիթ ունեցողները չեն գտնուիր միայն Հնդեւրոպացի Հաթերու մէջ, հնդեւրոպացի Արմէններն ու Պարսիկները նոյնպէս մեծաքիթ են, սակայն մեծաքիթ են նոյնպէս նաեւ Ասորեստանցիները, Եբրայեցիները, Սեմականները: Այս շարքին մէջ պէտք է դասել հրեայ ցեղը, զոր սխալմամբ կը կոչուի սեմական ցեղ» (Le Hittite.— Archiv Orientalni. vol. III No. 2, 1931 էջ 271 – 295):

*Այս Փոքրասիական (կամ Հայատիպ Սուբարի և այլ անուններով կոչուած), ցեղը աւելի ընդարձակ տարածութեամբ կ'ընդունի Մէնգհին, որովհետեւ զայն տարածուած ցոյց կուտայ ամբողջ Մերձաւոր Ասիոյ մէջ և գտած ըլլալ կը կարծէ նաև Հիւսիսային Ափրիկէ, Եգէական աշխարհին մէջ, ինչպէս նաև Հնդկաստան և Ներքին Ասիա (ՀԱ. 1932 էջ 431)։*

*Բրօֆ. Խաչատրեան առանց այս ծաւալուն տիրակալութիւնը տալու նոյն ցեղին, Արեւելեան Փոքր Ասիոյ, Արմենիայի և Հիւսիսային Միջագետքի մէջ ապրող բնիկ ժողովուրդները, — որոնք ինքն ընդհանուր անունով մը* Սուբարի *կ'անուանէ — կը ներկայացնէ միեւնոյն ֆիզիքական յատկանիշներով և կը հաստատէ թէ այս տիպը կը շարունակէ վերապրիլ Փոքր Ասիոյ ինչ ինչ ժողովուրդներուն և Հայերուն մէջ, հիմնուելով հեղինակաւոր կարծիքներուն վրայ՝* Ed. Meyer-ի, Alb. Götze-ի, William Rypley-ի, Eug. Pittarde-ի, Lehmann Haupt-ի, Felix von Luschan-ի, J. Markwart-ի, Contenau-ի, Gunther Ypsen-ի եւայլ. (տես Հայաստանի Սեպ. շրջ. պատմ. էջ 83 – 89)

*Մշակութային և լեզուական ցուցմանց համաձայն՝ որոնք պատմական ժամանակներու մէջ երեւան եկած կապակցութիւններէ կը յայտնաբերուի՝ այս ցեղը ծագած ըլլալու է Հնդկական* (indid) *և Գալաւնգեան ցեղերու հին խառնուրդէ մը, որ իր լիովին անջատեալ կզզիացման շրջանին մէջ՝ ներքին զարգացմամբ հետզհետէ աւելի զօրացած, եզական յատկութիւն ստացած է (Համտ. ՀԱ. 1933 էջ 431)։*

*Ամէն պարագայի մէջ Փոքր Ասիական ցեղին կը վերաբերէին Քր. է Բ. Հազարամեակէն առաջ ապրող թէ Սուբարուները, թէ Խալթիացիք կամ Նախահայերը և թէ Հուրրիները* (1), *իրենց հնագոյն ծանօթ լեզուներով, որոնք բոլորովին իրարմէ կը տարբերէին (ՀԱ. 1932 էջ 431 – 432)։*

---

(1) *Հուրրիները կամ Խուրրիները կը ներկայացնեն* ստորնախաւը *այն երկրին որ յետոյ* Միտանի *պիտի կոչուէր։ Հուրրիներու աշխարհը յետոյ բնակուած է* հնագոյն Հնդիկներու *և* Արիներու վերնախաւով *մը (ՀԱ. 1931 էջ 923)։ Երկիրը կոչուած է յետոյ Միտանի։*

*Ստորախաւի լեզուն բոլորովին տարբեր էր վերնախաւի լեզուէն (Նոյն)։*



*Եթէ աչքի առջեւ ունենանք նաև միւս կարճագլուխ ժողովուրդներու լեզուները, ինչպէս Նախասումերերէնը, Ելամերէնը եւայլ. առանց նոյն իսկ նկատի առնելու կովկասեան ոեւէ խումբ, պիտի տեսնենք թէ լեզուական տարբերութիւններ ունին։*

*Բացարձակապէս խնդրական է այն կարծիքը թէ այն կարճագըլուխները որոնք «Փոքր Ասիական» ցեղին կը պատկանէին, ունեցած են միակ նախալեզու մը, որմէ առաջ եկած ըլլան այդ իրարմէ տարբեր լեզուները, զորս այնպիսի խոր հնութեան մէջ կը գտնենք, չհաշուելով կրօնաբարգոյնները (ՀԱ. 1932 էջ 432)։*

*Բրօֆ. Ա. Խաչատրեան արեւելեան Փոքր Ասիոյ (այսինքն Կապադովկիոյ) և Արմենիայի բնիկ ժողովուրդին մարդաբանական տիպարը, նիւթական և մտաւոր մշակոյթը, լեզուն եւայլն քննութեան առնելով, կը հանգի սա եզրակացութեան թէ Քրիստոսէ առաջ Գ. Հազարամեակին այս երկիրներուն մէջ կար հնագոյն Բաբելոնին իսկ ծանօթ՝ մեծ, համարիւն մի ժողովրդախումբ, որուն մէկ ճիւղը արեւելեան Փոքր Ասիայի մէջ կը կոչուէր* Խէթ, *իսկ միւսը՝ Հայաստանի և հիւսիսային Միջագետքի մէջ՝* Սուբարու *կամ* Սուբարի:

*Անոնք ունենալով քաղաքակրթութեան ընդհանուր միասնական տարրեր՝ իւրաքանչիւրը իրենց հաստատուած միջավայրին մէջ զարգացան, անոնց տալով ուրոյն դրոշմ* (Հայաստանի Սեպ. շրջ. պատմ. *էջ* 120 – 122)։

*Բրօֆ. Ա. Խաչատրեանի տեսութեամբը Մերձաւոր Արեւելքի հնագոյն պատմութեան արշալոյսը կ'սկսի Սուբարիներու առանձին պատմական շրջանով, որուն կը յաջորդէ Խուրրի-Միտանիներու շրջանը։ Մասնաւորապէս ան Խուրրի անունը կը կապէ Միտանիներուն, զայն ստուգաբանելով ըստ կարգ մը հնաբաններու* Արիներ, *այսինքն Արիացի գաղթականներու տեսակ մը տիտղոս, ազնուական դաս, Սուբարի ժողովուրդին վրայ ղեկավար տարր, Միտանեան թագաւորութեան շրջանի յատուկ։ (Նախ քան Քրիստոս 2000 տարիներէն ասդին)։*

*Իսկ Տօք. Ժ. Քոնթընօ իր երկին մէջ պարզապէս կ'ընդունի թէ Բ. Հազարամեակին այս Ազիանիք (ըստ Խաչատրեանի Սուբարեան, ըստ բրօֆ. Մառի՝ Յաբեթեան եւայլն) տարրը աւելի կորովի կերպով կը յայտնուի,* «որով Սուբարու բազմութեան փոխարէն — որ աշխարհագրական ամբողջութիւն մըն էր, կրնանք խօսիլ Հուրրի ժողովուրդին կամ Հուրրիացւոց (*Հուրրիթ*) մասին որոնք Հուրրի եւ Միտանիի թագաւորութիւնները հիմնեցին»:

*Արդարև ինչպէս բրօֆ. Ա. Խաչատրեան եւս բացատրած է բեւեռագիր Հիւր նշանակը Հարի ալ արժէքը ունի։* «Մի քանի հնէաբաններ նախ որդեգրեցին Հարրի ընթերցումը — կ'ըսէ Տօքթ. Ժ. Քոնթընօ — եւ այս ժողովուրդին մէջ Արիացւոց անունը տեսան, այս նոյնացումը այնքան աւելի հրապուրիչ կը թուէր իրենց, որովհետեւ այս ժողովուրդին աստուածներուն մէջ արիականներ կան (Ինդրա, Միթրա, Վարունա), սակայն եւ այնպէս, Հուրրի ընթերցումը միայն պէտք է պահպանուի, անոր համար որ այդ անունին կարգ մը ածանցումները *հու – ու – ուր* եւ այլն. զայն *հուր* կարդալը անկարելի կը դարձնեն»:

*Որով ըստ Քոնթընօյի Սուբարուի* ազիանիք *(ասիական) ժողովուրդին անունն է* Հուրրին, *ինչպէս այդ նոյն* ազիանիք *ժողովուրդին Նախահայ անունը Արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ* Խէթի *է։ Միտանի թագաւորու-*

*թիւնն ու կայսրութիւնը հիմնող ժողովուրդն ալ նոյն այդ Սուբարուցի Հուրրին է։*

*Այսու հանդերձ Քոնթընօ եւս կ'ընդունի այն պատմական իրողութիւնը թէ հնդեւրոպացի կամ արիական խաւ մը նախ քան Քրիստոս Բ. Հազարամեակի սկիզբը կամ Գ. Հազարամեակի կիսուն թափանցած է ինչպէս Խէթի նոյնպէս Սուբարուի երկիրը և այդ թուականէն ասդին Խէթիի մէջ հիմնուած է Հաթեան Թագաւորութիւնը և Սուբարուի մէջ ալ՝ Հուրրիները իրենց մէջ ունենալով մաս մը նոյն արիացիներէն (հաւանաբար Լուվիները), հիմնած են Միտանիի թագաւորութիւնը։*

*Քոնթընօյի տեսակէտով Միտանիի քաղաքակրթութիւնը և պատմութիւնը Սուբարեաններէն (= Հուրրի) կտրուկ կերպով անջատ եղած չէ, ինչպէս բրօֆ. Խաչատրեան կը պնդէ, գոնէ այնքան որքան Նախահաթեան Խէթի և Ցետխէթեան Հաթեան պատմութիւնը։ Հնդեւրոպական կամ Արիական դիմագիծը Նախահայաստանի մէջ այնքան կտրուկ չէ որքան Հաթերու մօտ, և Միտանեան թագաւորութեան շրջանի պատմութիւնը ըստ Քոնթընօյի, պատկանած կ'ըլլայ Սուբարեան Հուրրի ժողովուրդին, ունենալով հանդերձ իր մէջ Արիական ղեկավար տարրեր եւս Բ. Հազարամեակէն ասդին։*

*Խաչատրեան եւս, Մետանիի պատմութեան մէջ արիական ղեկավար ազնուականութեան կազմակերպիչ դերը մեծցնելով և մինչև իսկ Սուբարու-Հուրիներէն անջատելով հանդերձ, որոշ ճիգ թափած է չեչտելու համար բնիկ տարրին քաղաքակրթական բարձրագոյն արժէքը, եկուորները իր մշակոյթին մէջ ձուլելու կարողութիւնը և իր թուական գերակշիռ դերը։*

*Քոնթընօ աւելի պարզ եղանակ մը կը նախընտրէ և փոխանակ նոր ժողովուրդ մը կերտելու և ետքն ալ հինը այդ նորին մէջ ի վեր հանելու, Միտանիներուն մէջ նոր ժողովուրդ չի տեսներ այլ պարզապէս, Խաչատրեանի հին Սուբարիները — Հուրրի անուամբ —, ընդունելով հանդերձ Արիական կազմակերպիչ շերտի մը անոր մէջ ձուլուիլը։ (Լեւոն Թիւթիւնճեան,* Մեր երկրին հին քաղաքակրթութիւնը եւ պատմութիւնը *տես* Արեւ *ժթ. տարի* 1934 *թիւ* 4741)։

*Շատ դժուար է այս անհամաձայնութեանց մէջէն ելլել, և ինչպէս շատ իրաւամբ դիտել կու տայ Լ. Թիւթիւնճեան (Նոյն)* «մեզ համար էականը այն չէ թէ Հայաստանի եւ Փոքր Ասիոյ բնիկ մեր նախնեաց ազգանունը Սուբարի էր թէ Հուրի, կամ Հուրին «Խարրի» կը կարդացուի թէ ոչ, եւ կամ թէ այդ Խարրի կամ Հուրի անունը Միտաննիի արիական ազնուականութեան ցեղոսն է թէ ոչ» *(Նոյն)։*

*Միակ իրողութիւնը որ մեզի կը շահագրգռէ, սա է թէ բովանդակ Մերձաւոր Ասիոյ, ինչպէս նաեւ մեր ուշադրութեան և մասնաւոր հետաքրքրութեան առարկան՝ Արգէոսի շուրջը կ'ապրէին ժողովուրդներ, որոնք միեւնոյն մշակոյթը և ցեղային միեւնոյն նկարագիրը ունէին և կը պատկանէին հնագոյն ցեղի մը որ ո՛չ Հնդեւրոպական էր և ո՛չ Սեմական։*

G. Contenau *իր մէկ գործին մէջ* (Les Tablettes de Kerkouk et les Origines de la Civilisation Assyrienne 1926) *կ'ըսէ թէ* «վերջին տարիներու գիւտերը կը թոյլատրեն Ամուռուլի մէջ (Վերին Սուրիա) բնակող սեմականներու հանդէպ՝ անդրպատմական շրջանի մէջ սահմանագծել խումբ մը ոչ Սեմական ժողովուրդ միեւնոյն կենցաղով՝ բաղկացած Փոքր Ասիայէն, Տաւրոսի շրջանէն,



Ներկայ Արմենիայէն, Միջագետքէն. որուն բաղկացուցիչ տարրերը կը մասնակցէին նոյն քաղաքակրթութեան, արուեստի, կրօնի ու որուն ամենակատարեալ տիպարը մեզ տուած է Սումեր երկիրը: Այս քաղաքակրթութեան ազդեցութիւնը զգալի եղաւ նոյնիսկ արեւմուտքի մէջ մինչեւ Եգէական աշխարհը:

Միտանի-Հաթ(1) անուններու տարածման շրջանը ահագին է: Այս անունները կը գտնենք Բաբելոնեան հին արձանագրութիւններուն, նոյնպէս նաեւ Կասիտերէնին, Ասորեստանի հնագոյն յիշատակարաններուն. ինչպէս նաեւ Քերքուկի արձանագրութիւններուն, Ասորեստանեան նորագոյն յիշատակարաններուն, Տել էլ-Ամառնայի նամակներուն եւ Տել-Տաաննիկի փաստագիրներուն մէջ, կարճ խօսքով՝ մի շատ ընդարձակատարած շրջանի եւ ահագին ժամանակամիջոցի մէջ:

Ասիանիք (Ասիական ծագում ունեցող) անուններու ներկայութիւնը Կապադովկեան սալիկներու վրայ, որոնց թուականն է եռահազարեակի երկրորդ կէսը, լոյս կը սփռէ Փոքր Ասիոյ ժողովուրդներուն վրայ շուրջ 3000ին»,

*Այս բացատրութիւններու պարզ հետեւութիւնը այն է, որ Սուբարու ժողովուրդը Նախասիոյ հնագոյն շրջանին մէջ կը կազմէր ազգաբնակութեան մի զօրաւոր խաւը, որուն ներկայութիւնը գոնէ առայժմ կ'ընդնշմարուի անուններու, այսինքն՝ լեզուի մնացորդով։*

*Այսպէս ուրեմն լեզուային մնացորդներու ու պատմական յիշատակներու վկայութեան հիման վրայ կը հասնինք այն եզրակացութեան թէ Սեմական և Հնդեւրոպական ժողովուրդներու հանդէպ կար ուրիշ ազգախումբ մը՝ Արեւելեան Փոքր Ասիոյ, Արմենիոյ, Տաւրոսի շրջանին և Հիւսիսային Միջագետքի մէջ բնակուած, որը յայտնի էր Սուբարի անունով և որուն մէկ ճիւղը վերջը կեդրոնացաւ վերին Տիգրիսի աւազանին և Եփրատի միջև, և իր անունով իր բնակավայրը կոչուեցաւ Սուբրիա = Տովք։ (բրօֆ. Խաչատր.* Հայաստանի սեպ. շրջ. պատմ. *էջ* 75–76)։

«Հակառակ այս ժողովուրդին այնքան տարածուն լինելուն ու պատահական յաջողութիւններուն, որը՝ համաձայն յետին omen (գուշակ) արձանագրութիւններուն՝ իրենց բաժին ինկաւ Սումերներու դէմ մղած պատերազմներու մէջ, ապացոյց չկայ, թէ անոնք հնագոյն ժամանակներու մէջ կազմած ըլլան միացեալ պետութիւն մը, որը կառավարուէր կենտրոնական քաղաքով մը ու միակ թագաւորով մը: Շատ աւելի հաւանական է, ինչպէս սովորաբար լեռնցիներն են, որ տեղական նախանձոտութիւնը արգելք եղած է միութեան եւ կազմակերպութեան պակասը զրկած է Սուբարիներու յաղթութիւնը տեւական նշանակութենէ մը» (Sidney Smith. - Early History of Assyria to 1000 B. C. 1928 *էջ* 74 *բրօֆ. Խաչատրեան*, նոյն *էջ* 76)։

*Այս տեսութեամբ Քր.է առաջ Գ. Հազարամեակին Նախասիան բնակուած էր գիտուններուն կողմէ զանազան անուններով կոչուած նախաբնիկ ժողովուրդէ մը, որուն պատմութիւնը կը կորսուի խաւարին մէջ։*

*Այս ըստ բրօֆ. Խաչատրեանի Սուբարեան կամ ըստ այլոց «Հայատիպ»* (Armenoïde) *կամ Համափոքրասիական ժողովուրդին մէկ ճիւղն էին Խէթիացիք կամ Նախահաթերը որոնք կ'ապրէին Կապադովկիոյ մէջ, Գ. Հազարամեակին։*

---

(1) *Հոս աւելորդ չըլլայ դիտել տալ թէ* Contenau *այս բացատրութիւնը կը գործածէ փոխան բրօֆ. Խաչատրեանի* Սուբարուին։

Այս ցեղին տիպարին նմոյշները ըստ Տաշեանի կրնան գտնուիլ ընդարձակ տարածութեան մէջ, բայց ո՛չ այն իմաստով թէ այն եղած ըլլայ միակ հնագոյն բնակչութիւնը ամբողջ Մերձաւոր Արեւելքի կամ Ցառաջակողման Ասիոյ։

Այս տիպարին քով կար այլեւայլ տեղեր նաեւ իբր գերիշխող մասնաւորապէս երկարագլուխ տիպարը։

Թէ՛ կարճագլուխ եւ թէ երկարագլուխ տիպարով կը ներկայանան նաեւ հնագոյն պատմութեան մէջ զանազան ազգեր եւ լեզուներ: (Հ. Յակոբոս Տաշեան. ՀԱ. 1932 էջ 163–164)։

Ուստի «Փոքր Ասիական» կամ «Հայատիպ» տիպարը միակ պատմական ազգի մը ընծայել ուղիղ չի նկատեր Հ. Տաշեան։ (Նոյն. էջ 164)։

Այս տեսութեամբ ինչպէս կը տեսնուի կը քանդուի բրոֆ. Խաչատրեանի այն վարկածը որով կ'ուզէ բովանդակ Արեւելեան Փոքր Ասիան, Արմենիան եւ հիւսիսային Միջագետքը բնակուած ցոյց տալ միակ ժողովուրդէ մը (հմմտ. Տաշեան ՀԱ. 1932 էջ 166)։

Պրոֆ. Խաչատրեանի այն տեսութիւնը թէ Սուբարիները կամ Սուբարուները վերջէն Կապադովկիա կոչուած երկրին մէջ առած են Խէթի (Նախահայթ) անունը կասկածի տակ կը դնեն գիտուններէն ոմանք, իրենց տարբեր տեսութիւններով։

Այսպէս B· Hrozny կ'ենթադրէ (տես՝ Արեւելք թ. 510. 13 մարտ 1933) որ Խէթիացիք կամ Նախահայթերը մօտաւորապէս 4000 տարի առաջ Քրիստոսէ (Դ. Հազարամեակ) գաղթած են Փոքր Ասիա (մասնաւորապէս ապագայ Գամրայ աշխարհը կամ Կապադովկիա) թերեւս գալով Կովկասէն կամ աւելի անկէ անցնելով, ինչպէս, անկէ անցած են նաեւ Փոքր Ասիա եկած Հնդեւրոպականաց մեծ մասը (ըստ տեսութեան Տաշեանի ՀԱ. 1932 էջ 120)։

Խէթիացիք կամ Նախահայթերը որոնք «Խէթի» երկրին ամէնահին բնիկներն էին եւ Համափոքրասիական կամ Տաւրոսեան կոչուած ցեղին ամէնէն զտարիւն ներկայացուցիչները (տես Արեւելք թ. 510. 23 մարտ 1933) հաստատուած են վերջին Կապադովկիա անունով ճանչցուած երկիրը։

Նոյնպէս հոն էր իրենց կեդրոնը կամ մայրաքաղաքը Խատտուշաշ (հիմա Պօղազ քէօյ, Եոզկաթի մօտ)։

Այս տեսութիւնը սակայն բոլորովին չի քանդեր պրոֆ. Խաչատրեանի եւ իր ետին կանգնող հնախօսներու վարկածը։

Խէթիացիք կամ Նախահայթերը կրնան մաս կամ ցեղակից ըլլալ Սուբարիներու որոնք արդարեւ կրնան Կովկասէն եկած ըլլալ (համաձայն բրոֆ. Մառի Յաբեթական տեսութեան) եւ արեւելքէն Դ. Հազարամեակին մտած ըլլալ վերջէն Կապադովկիա կոչուած երկիրը, եւ հոն տեղաւորուած։ Ինչ որ էական է եւ կարեւոր սա է որ Խէթիները կամ Նախահայթերը կը պատկանին Համափոքրասիական, Տաւրոսեան, Արմէնատիպ, Սուբարու, Յաբեթական զանազան կոչումներով գիտուններէ անուանուած Նախաբնիկներուն ցեղին, որ ո՛չ հնդեւրոպացի էր եւ ո՛չ սեմական։

Պրոֆ. Խաչատրեանի Սուբարու ժողովրդեան համատարած տիրապետութեան վարկածին ուժ կուտայ Տաշեանի այն տեսութիւնը թէ դժուար չէ մտածել — կամ թերեւս հաւանական է մտածել — թէ Խուրրիներն ալ կը վերաբերին բուն այն ժողովուրդներու խումբին



որոնք գոնէ Դ. Հազարամեակին վերջերը արդէն Մերձաւոր Արեւելքի զանազան մասերուն մէջ տեղաւորուած էին, (ՀԱ. 1927 էջ 401)։

Եւ որովհետեւ կը հաստատէ թէ Խուրրիները պատմութեան մէջ կ'երեւան Բ. Հազարամեակին եւ այս միջոցին հոն են նաեւ հնդիկարիք որոնց պատմութիւնը կը համրնթանայ գոնէ քանի մը դար, (ՀԱ. 1932 էջ 401) պարզ է հետեւցնել թէ Պրոֆ. Խաչատրեան իրաւունք ունէր ենթադրելու թէ Դ. Հազարամեակին վերջերը այդ շրջանակին մէջ տեղաւորուած ժողովուրդը որ ցեղակից էր Մերձաւոր Արեւելքի մէջ տարածուած ժողովուրդին, պէտք էր ուրիշ անուն մը ունենար։ Ուստի Խուրրիներէն առաջ Խուրրի աշխարհը բնակող այդ ժողովուրդը կոչած է Սուբարու։ Այն առեն արդէն ամէն դժուարութիւն լուծուած կ'ըլլայ, վասնզի ինչպէս կը տեսնուի Տաշեան (ՀԱ. 1932 էջ 402) չափազանց կը վարանի Խուրրիները նկատելու իբր Փոքր Ասիական կամ Հայատիպ ցեղին (ըստ Խաչատրեանի Սուբարու) հետ նոյնացած ժողովուրդ մը, որ միանգամայն միակն ալ ըլլայ այն տարածութեան մէջ իբր հնագոյն բնակչութիւն՝ անյիշատակ ժամանակներէ ի վեր(1)։

Պրոֆ. Խաչատրեան ահա այդ միակ ժողովուրդը դտած ըլլալ կը կարծէ Սուբարու ժողովուրդին համար գծելով ընդարձակ բնակավայր մը, որուն մէջ է նաեւ մեր Արգէոսի շրջանակը, ուր կ'ապրէր այդ ժողովուրդներու մէկ ճիւղը, իբր հնագոյն կամ նախնական խաւը բնակչութեան, ստանալով Խէթի երկրին անունով Խէթ կամ Խէթիացի անունը։

«Անոնք աւելի դաշնակցութիւն մըն էին քան թէ ցեղ մը, որովհետեւ իրենց ինչ ինչ տարրերը կը պատկանէին Կովկասեան ցեղին, մինչդեռ միւսները կը խօսէին հնդեւրոպական լեզու մը՝ հեռաւոր նմանութեամբ յունարէնի եւ անկասկած կապուած յունական կղզիներու հնագոյն բնակիչներու լեզուին. այս կղզիներուն պատկան է Կրէտէի հրաշալի քաղաքակրթութիւնը:

Իրենց պատմութեան ընթացքին մեծագոյն մասին՝ անոնք բաժնուած էին անկախ պետութեանց, յաճախ իրարու դաշնակից ու երբեմն ալ իրարու դէմ պատերազմող ու միայն շրջանին վերջաւորութեան մօտերը անոնք ենթարկուեցան միակ մէկ գերիշխանութեան»: (Leonard Woolley. Carchemisch of the Hittites.— Wunders of Past. III 559 – 568).

Իր թագաւորներէն ծանօթ են ըստ Garstangի Պամբա. (2500 Քր.է առաջ), Բիյուստի (2100?), Տլաբառնաս (2000?) (տես, «The Hettites and their Realm.-Harmsworths universal hisfory of the W orld chap. 23 713-738. Նաեւ պրոֆ. Խաչատրեանի Հայաստանի սեպ. արձ. պատմ. էջ 437)։

Արգէոսի շուրջը ապրող ժողովուրդներու այս հնագոյն խաւը

(1) Տաշեան իր վարանումը կը պատճառաբանէ շատ իրաւացի կերպով դիտել տալով թէ Երասխի հովիտին եւ արդի Հայաստանի սահմաններուն մէջ «կարճագլուխ Հայատիպ» նախնական բնակչութիւն մը եթէ գոյութիւն ունէր, ամէն պարագայի մէջ փոքրամասնութիւն մըն էր, վասնզի որեւէ առթիւ գտնուած կմախքները եւ գանկերը երկարագլուխ են։ (ՀԱ. 1932 էջ 167–169).

Իսկ եթէ Խուրրիները ընդունինք թէ երկարագլուխներ էին, այն ատեն անոնք պիտի դադրէին մաս կազմելէ այդ ժամանակ Փոքր Ասիոյ բնակչութիւնը ներկայացնող «Հայատիպ» ցեղին պատկանելէ։

չենք գիտեր թէ որքան անխառն կերպով ապրած է այդ շրջանակին մէջ մինչեւ Բ. Հազարամեակը, երբ պիտի գար իրեն խառնուիլ Հնդեւրոպական նոր զանգուած մը եւ շրջափոխել բնակչութեան ընդհանուր նկարագիրը։

Սակայն ինչ ինչ նշաններ ցոյց կուտան թէ անիկա ցեղախառնումներու ենթարկուած է կամ իր մէջ ընդունած է տարբեր ցեղէ բնակիչներ։

Բայց անժխտելի իրողութիւն է որ Փոքր Ասիոյ մէջ այսօր իսկ ապրող ժողովուրդներու մեծագոյն մասը անոնց տիպին կը պատկանի, վասնզի Նախասիոյ Նախաբնիկները (ըստ պրոֆ. Խաչատուրեանի Սուբարուները) իրենց զօրեղ արեան շնորհիւ ֆիզիքապէս ձուլած են բոլոր Հնդեւրոպական ցեղերը որոնք իրենց վրայ եկած են։ (Տօքթ. Նշան Մարտիրոսեան, Արեւելք թ. 501. 14 մարտ 1933)։

Այս չափազանց տոկուն ու կորովի ցեղին հնագոյն ներկայացուցիչները կամ նախնիքը Մերձաւոր Ասիոյ բնիկ ժողովուրդներն էին, որոնց ընդհանրապէս Հաթ անունը կուտան։

Սակայն այս ազգագրական կոչումը բոլորովին ճիշդ չէ, որովհետեւ Հաթ ժողովուրդին իշխող տարրը, որ մօտաւորապէս Քրիստոսէ 2000 տարի առաջ Փոքր Ասիա մտաւ, նախապէս Հնդեւրոպական կամ Արիական ցեղին կը պատկանէր։

Դարերով Փոքր Ասիական հնագոյն ցեղերու հետ ապրելով, արիւնախառնումով ֆիզիքապէս բոլորովին ձուլուեցաւ այս Հնդեւրոպական խաւը, որուն անդամները իրենք զիրենք Խասսուաշի (=Պազարքեօյ) արձանագրութեանց մէջ Նէսիացի կամ Նասիացի կը կոչեն։

Նոյնպէս ձուլուած են գրեթէ բոլոր օտարամուտ (հնդեւրոպական, սեմական եւ մոնղոլական) ծագում ունեցող ազգերը, որոնք ըլլայ Քր.է առաջ կամ Քրիստոսէ վերջ Փոքր Ասիա արշաւած են, վասնզի ըստ գերման աշխարհահռչակ ցեղաբան Ֆէլիքս Ֆոն Լուշանի Համափոքրասիական (1) այն ցեղը որ Մերձաւոր Արեւելքի հնագոյն բնակչութիւնը կը ներկայացնէր աշխարհիս միւս բոլոր ցեղերէն աւելի զօրեղ արիւն ունէր (տես Արեւելք թ. 505 18 Մարտ 1933)։

Այս յատկանշական ու զարմանալի ցեղին արդի ներկայացուցիչները կը նկատուին, բազմազան Փոքրասիական ազգութիւններ (2) ինչպէս Հայերը, Ղզըլպաշները, Թախտաճիները եւ ուրիշ արեւելեան հնագոյն ցեղերը, որոնք թէեւ քաղաքակրթապէս ձուլուած են բայց

---

(1) Բրոֆ. Ն. Մառի Ցաբեթական կոչած ցեղը կամ Տաւրոսեան կամ Հայատիպ, եւ այլն անունով ճանչցուած ոչ Հնդեւրոպական ցեղը։

(2) Ըստ բրոֆ. Սէյսի (էջ 63) Տաւրոսի լեռնաշղթային բնակչաց մէջ դեռ այսօր կրնանք նշմարել անոնց կերպարանքն ու որոշիչ հանգամանքը։ Կապադովկիոյ զանազան մասերուն մէջ անոնց շառաւիղները կը տեսնուին դեռ։ 1880ական թուականներուն անգլ. հիւպատոս զօր. Ուիլսըն կ'ըսէ թէ «անոնց տգեղ տիպարը՝ Կապադովկիոյ մի քանի մասերուն մէջ, մանաւանդ Նիյտէի հիւսիսային արեւմտեան կողմի ընդարձակ դաշտագետին մէջ գտած եմ ստորերկրեայ այլանդակ քաղաքներ որոնց մէջ բնակողներու մէջ դեռ կը տեսնուի այդ տիպը»։



ֆիզիքապէս ձուլած են ուրիշ ցեղեր, ՙՓռիւգիացիները, Թրակացիները եւ ուրիշ Հնդեւրոպական ցեղեր, ըստ որս նաեւ Արեւմուտքէն Հայաստան մտնող Հնդեւրոպական տարրեր որոնք ԺԲ. դարուն Վոսփորի վրայով Փոքր Ասիա մտնելով վերջ տուին Հաթերու կայսրութեան։ Ասոնք բոլորը ժամանակի ընթացքին, մեծ մասամբ ձուլուած են Արեւելքի այս նախաբնիկներուն հետ, (Արեւելք թ. 505 18 Մարտ 1933)։ Նոյնը կարելի է ըսել նաեւ Արեւելքէն Հայաստան եւ անկէ անցնելով Փոքր Ասիա առաջացող ուրիշ Հնդեւրոպական ցեղերու համար։

Այս ցեղախառնումը առաւելապէս պէտք է կատարուած ըլլայ արդի Կեսարիոյ շրջանակին մէջ որ Հաթեան մեծ կայսրութեան միջնաբերդն էր մինչեւ Քրիստոսէ ԺԲ. դար առաջ եւ ուր կ'ապրէին «Համափոքրասիկան», «Տաւրոսեան», «Ցաբեթական», «Հայատիպ» եւ այլ անուններով, հնագոյն քաղաքակիրթ ցեղին ամէնէն զտարիւն ներկայացուցիչները՝ Խաթիացիք (այլ անուամբ Սուբարու) որոնք դարերու ընթացքին գրեթէ բոլոր այլացեղ ազգերը իրենց մէջ հալեցուցին։

Փոքր Ասիոյ նախաբնիկ այս ժողովուրդը որ իբր ցեղ կը տիրապետէր բովանդակ Փոքր Ասիոյ՝ Սուբարու, Խէթ եւ այլ անուններով, կը կազմէր նաեւ Ասորեստանի ժողովուրդին գլխաւոր խաւը՝ թէ Արբելայի հիւսիսային դաշտին եւ թէ Տիգրիսի հովիտին երկարութեամբ մինչեւ Ստորին Զաթի բերանը եւ Ասորեստանի երկիրը, մասը կը կազմէր իր ցեղային բնակավայրին, որ կը տարածուէր հեռու դէպի հարաւ-արեւելք մինչեւ Քերքուք ու դէպի արեւմուտք մինչեւ Սինջար լեռները։ (Հմմտ. Բրոֆ. Խաչատրեան, Նոյն էջ 74-75)։

Այս կերպով այս ժողովուրդը մշտական բախման մէջ էր Սումերներու հետ եւ այս պատճառով ալ յարատեւ շփումի մէջ Սումերեան քաղաքակրթութեան հետ։

Ուստի անոնք ազդուեցան Սումերեան գերազանց քաղաքակրթութենէն (Նոյն) որուն ներգործումին նպաստեց հեռաւոր գերիշխանութիւնը Միջագետեան պետութիւններու՝ տարածուած մինչեւ կեդրոնական Փոքր Ասիա (ՀԱ. 1931 էջ 56)։ ինչպէս կը միտին հաստատել Սումերական թագաւորներու ինչ ինչ արձանագրութիւնները(1)։

---

(1) Արշակ Սաֆրաստեան իր յօդուածաշարքին մէջ (ԲԶՄՊ. 1931 էջ 257) կը յիշատակէ երեք արձանագրութիւններ, որոնցմէ մին ենթադրաբար Քս.է 3000 տարի առաջ թուականի մը պատկանող։

Այս արձանագրութեան մէջ Սումերական թագաւորը կը գրէ թէ «իմ ահարկու դեմքովս հրամաններուս հնազանդութիւնը ապահովելու գացի (այս ինչ այն ինչ տեղերը) որոնց լեռները հեռու են, որոնց լեզուները օտար ու խառը...»: Առանց ուրիշ մեկնութեան կարելի է ըսել թէ Միջագետաց տափաստաններէն հեռու լեռներ, օտար ու խառը լեզուներ ունեցող տեղերը կամ Խուրրիներու կամ Նախահայերու երկիրները կրնային ըլլալ։

Ուրիշ թագաւոր մը Նարամ Սին (մօտ 2800 կամ ըստ՝ Garstnagի 2500 Քս.է առաջ) ունի արձանագրութիւն մը ուր իր արշաւը կը նկարագրէ դէպի «Էլամի աշխարհը» եւ այլ վայրեր եւ «այնչափ հեռու որչափ

Արդարև, Մերձաւոր Ասիոյ մէջ գերիշխան եղած է Սեմական ազդեցութիւնը սկսեալ պատմական շրջանի սկզբնաւորութենէն, այսինքն շուրջ Քս.է առաջ 3000 թուականէն։

Միջագետքի մէջ անոր գլխաւոր օրրանն էր Ուր քաղաքը ուր Քս.է առաջ Գ. Հազարամեակին կ'շխէր Ուրի առաջին հարստութիւնը երբ դեռ Սումերեան քաղաքները կ'ապրէին գերագահութեան (hégémonie) մէջ։

Անոր կը յաջորդէ Աքքատեան հարստութիւնը (2725—2579 Քր. առաջ), յետոյ Սումերեան Ուրի Գ. Հարստութիւնը (2354—2238) և վերջապէս դէպի 2200 թուականը Քր.է առաջ, Բաբելոն կը կառավարուէր Սեմական Բաբելոնեան Առաջին հարստութեան (2105—1805) կողմէ որ Մերձաւոր Ասիոյ մէջ գերազանց ազդեցութիւն մը կ'ունենար։

Ըստ Էտ. Մեյերի, «անկասկած է, որ Նախասիան Բաբելոնի առաջաւոր իշխանութեան ղեկավարութեամբ ունէր մի կազմակերպուած օրինագրուած վաճառականական հաղորդակցութիւն Սեւ Ծովու, Ալիսի, Եփրատի եւ Տիգրիսի երկիրներէն մինչեւ արաբական անապատները, Կիպրոսէն, Միջերկրականի ափերէն մինչեւ Զանգրոս լեռնաշղթան ու անկէ ալ անդին՝ մինչեւ Իրանի բարձրաւանդակը»։

Այս լայնածիր սահմանին մէջ եռանդուն հաղորդակցութիւնը կ'առաջնորդէր դէպի միշտ աճող ժողովուրդներու խառնուրդը, որ շատ որոշ կերպով կը տեսնուի առեւտրական անձնանուններու Փոքր Ասիոյ, Սուրիոյ տարածութեան եւ Սուբարեան անուններու Բաբելոնի եւ Ասորեստանի մէջ գործածական ըլլալէն: Ինքնին հասկնալի է, որ այս խառնուրդէն առաջ պիտի գար ժողովուրդին բոլոր առանձնայատկութիւնները գերազանցող մի համասեռ «Նախասիական» մշակոյթ: Նա կը տիրապետէ նիւթական կեանքի պայմաններու բոլոր կողմերուն վրայ եւ կ'արտայայտուի առեւտրական յարաբերութիւններու ու շատ նկատելի ձեւով անոր չափասու պետական աշխարհայեացքի եւ իրաւական կեանքի մէջ: Այս համասեռութիւնը կը տեւէ կաւէ տախտակներու վրայ գրելու արուեստին մէջ (ամփոփուած պատեանի մը մէջ որուն վրայ կը կրկնուէր նոյն գրութիւնը) շատ վկաներու ներկայութեան եւ կնքադրոշմ վաւերացնելով դնելու ձեւի, փոխատուութեան եւ տոկոսներու իշխանութեան իրաւունքի մէջ, ապառիկներ վարձել տալու, վարձելու սակարկութեան եւ ոչ նուազ նաեւ ամուսնութեան եւ ստրկութեան իրաւունքներու եւ որոշ ժամանակի մը համար ստրուկներու աշխատանքը վարձելուն մէջ: Անոր վրայ կուգայ ամէն տեղ տիրող դրամական հաշիւը՝ զուտ արծաթով՝ բաբելոնեան կշռով (1 մին— 60 շիգել, 1 մնաս — 60 սիկղ): Ինչպէս ապրանքներու փոխանակութեան նոյնպէս նաեւ ձեռարուեստի դէմքին մէջ կար շատ աշխոյժ փոխանակութիւն մը: Որդէն կենցաղային երեւոյթներէն, յիշենք գինիին հետ նաեւ նախաւոր ձեւով պատրաստուած գարեջուրի գործածութիւնը: (Հայ. սեպ. շրջ. պատմ. էջ 441):

---

Մայրիի անտառը»: Սաֆրաստեան յիշելով Հին Կտակարանին ակնարկութիւնը՝ Լիբանանի մայրիներու մասին, կը խորհի թէ Նարամ Սին մինչև հոն տեղերը իր իշխանութեան տակ ունեցած ըլլայ, (ԲԶՎՊ. 1931 էջ 258), մինչ ուրիշներ Մայրիի լեռը կը նոյնացնեն Ամանոսի հետ (տես նոյն)։

Երրորդ արձանագրութիւնն է Աքքատի թագաւոր Համմուրաբիին (մօտ 1900 Քս.է առաջ) ուր ակնարկներ կան Միջագետքէն հիւսիս և հիւսիս-արեւմուտք տարածուող աշխարհամասին վրայ։



Կրօնական մարզին մէջ ալ փոխադարձ ազդեցութիւնը շատ որոշ էր։

Բաբելոնեան Աստուածները իրենց դիցավէպերով և կախարդական բանաձեւերով, խորհրդանշաններով, արձաններով, տարածուած էին ինչպէս Սուրիոյ և Միտանիոյ (Հարաւ Հայաստան) նոյնպէս նաև Փոքր Ասիոյ մէջ։ (Պրոֆ. Խաչատրեան, նոյն էջ 442)։

Contenau ընդարձակօրէն կը նշանակէ կրօնական այն կապակցութիւնը որ Սումեր-Աքքատ բնապաշտ կրօնքին հետ ունեցած են Էլամի, Հաթերու, Միտանիի և նոյնիսկ Փռիւգիոյ բնակիչները (Պրոֆ. Խաչատրեան, Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 448—453)։

Միայն ասով կրնայ մեկնուիլ արդէն այն տիրապետութիւնը որ Սումեր-Աքքատեան արուեստը ունեցած էր Մերձաւոր Ասիոյ մէջ Գ. Հազարամեակին։ (ՀԱ. 1931, էջ 56)։

Խէթերը՝ (= Նախահայերը) իբր Նախասիոյ ժողովուրդներէն մէկը չէին կրնար ունենալ այնպիսի մշակոյթ մը, որ բոլորովին տարբեր ըլլար դրացի ժողովուրդներէն։

Դժբախտաբար մինչեւ ցարդ ձեռք բերուած վաւերագիրները և յիշատակարանները այնքան սահմանափակ են, որ թոյլ չեն տար ժամանակով և տեղով ճշդելու փոխադարձ ազդեցութիւնները։

Դարձեալ նկատելի է որ ժամանակի ընթացքին մեծ ու փոքր չափով ներմուծուած օտար մշակութային տարրերը տեղական ժողովուրդէն իւրացուած են, որով նաև միօրինակութիւն առաջ եկած է Նախասիոյ ժողովուրդներու մշակոյթներուն միջև։

Ս. Սմիթ կ'ըսէ թէ «Սուբարու ժողովուրդը (Մերձաւոր Ասիոյ նախաբնիկներուն Հայաստանի հաստատուած ճիւղը) որ Ասորեստանի հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան լեռներէն եկաւ, իր հետը բերաւ մշակոյթի ինչինչ տարրեր, որոնք կը հաստատեն կապակցութիւն մը արեւմտեան Փոքր Ասիոյ ժողովուրդներուն հետ: Այսպէս այն կռնաձեւը, որ այնքան օտարոտի տեսք մը կը ներկայացնէ Ասուրի մէջ, կարող էր գործադրուիլ անտառոտ երկրի մը մէջ՝ ինչպէս Տաւրոս լեռներուն մէջ, ճիշդ ինչպէս են նաեւ Կեդրոնական Կապադովկիոյ մէջ»: (տես Պրոֆ. Խաչատրեան Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 75):

Ճարտարապետութեան միաձեւութիւնը այս վաղընջական ժամանակներու մէջ ընդհանրապէս ամէնէն աւելի չեշտուած է։

Հնախօսութիւնը համոզիչ կերպով հաստատած է թէ Մարական և Պարսկական արուեստը քիչ բան առած է Բաբելոնէն մինչ շատ բան ուսած է Ասորեստանէն, ուստի մեծ մասամբ անոր համար հասարակաց է Հայկական բարձրաւանդակի ժողովուրդներու՝ Սուբարուներու, Միտանիներու, Ուրարտուներու, Փոքր Ասիական երկիրներու և Պոնտոսի, Պափլագոնիայի, Փռիւգիայի, Լիւդիոյ հետ, ինչպէս ժայռափոր բնակարանները, վիմաշէն դամբարանները, — որոնք փորուած են գետնէն բարձր ժայռորմերու մէջ —, քարէ սանդուխները՝ լեռներու բարձրութեան վրայ և ստորերկրեայ վեմափոր անցքերը, պարիսպները՝ կառուցուած կոփուած համաչափ քառանկիւն մեծադանգուած քարերով, քառակուսի տնաձեւը, հիմը քարէ և վրան հում աղիւսէ պատերով՝ փայտէ յենարաններով ամրացուած։

Ասոնց յարակից կը գտնուին ուղղակի ցեխէ հիւսուած պատեր

որոնք շատ հին ժամանակներէն սկսեալ տարածուած են եղեր հարաւային Եւրոպայի(1) և Միջագետքի մէջ։

Այս տնաձեւը իր շարունակութեամբ դեռ մինչև հիմա ալ սովորական տնաձեւն է նաև Հայաստանի։

Այս հիմնական նոյնութեան հետ նաև դիտուած է զարդաքանդակներու նմանութիւնը, որոնք դարերու ամբողջ ընթացքին կը յարատեւեն պահել իրենց գոյութիւնը և կը հասնին մինչև մեր օրերը։

Բրոֆ. Focillon (յառաջաբանին մէջ Y. Baltrousaitis-ի Etudes sur l'Art Médiéval en Georgie գործին 1929, էջ X) կ'ըսէ թէ «պէտք չէ մոռնալ, որ Միջագետքի նախնական քաղաքակրթութեան ճառագայթումը տարածուած է այս երկիրներուն (Հայաստան եւ Վրաստան) մէջ ու նշանակալից է վերագտնել հայկական հիւսաքանդակ զարդեր (entrelancs, Flechtband) Հաթեանց քանդակներուն մէջ»:

Միջագետքի և Հաթեանց քանդակները ուրեմն իրարու հետ կը կապուէին, ինչպէս Հայկականները և Վրականները կը վերապրեցնէին զանոնք։

Այսպէս հնագոյն տնաձեւը իր չինուածանիւթերով և քանդակազարդերով Փոքր Ասիոյ բնակչութեան նախնական խաւին (Սուբարուխէթիացիներու) Մերձաւոր Արեւելքի մէջ տիրապետած շրջանէն սկըսած զարգացած է, Միջագետքին ազդեցութեան տակ, որ գերակշիռ էր վերջէն Կապադովկիա կոչուած երկրին մէջ։

Այս Սումեր–Աքքատեան ազդեցութեան մէկ ուրիշ արտայայտութիւնը կրնանք նկատել նաեւ գրաւոր լեզուն, որ նոյնպէս Սեմական էր։

Ըստ Հ. Յակոբոս Տաշեանի (տես Արամերէնի գործածութիւնն Աքամէնեան պետութեան մէջ, ՀԱ. 1933 էջ 211) «Սեմական լեզուաւ են ապագայ Գամրաց աշխարհի հնագոյն յիշատակարանները Գ. Հազարամեակէ (ի Կանէշ) եւ նոյնպէս ճշդիւ նոյն բարբառով «պաշտօնական» (Հնդիկեւր) Հաթերն են՝ որ իրենց բեւեռագիր աղիւսներով տեղեկութիւն կուտան Նախահայերու եւ անոնց լեզուին մասին»:

Սումերեան ազդեցութիւնը ո՛չ միայն կրնայ բացատրուիլ Միջագետեան պետութեանց հեռաւոր գերիշխանութեամբ, Արեւմտեան Փոքր Ասիոյ վրայ, այլ նաեւ այն առեւտրական յարաբերութիւններով որ նախնական Սումերեան շրջանի մէջ Բաբելոնի ընդարձակածաւալ վաճառականութիւնը ստեղծած էր Հնդկաստանէն մինչև Եգիպտոս, և հիմնած զանազան գաղութներ։

Աքքատի Սարգոն (շուրջ 2800 կամ 2650ին և կամ 2500 նախ քան Քր.) կը կատարէ արշաւանք մը դէպի Փոքր Ասիա անոր կեդրոնին մէջ հաստատուած իր ազգակից վաճառականներուն շահերը պաշտպանելու համար տեղական իշխանութիւններուն դէմ։

Այս վաճառականները հաստատուած էին Կանէշ քաղաքին մէջ և օգնութիւն կը խնդրէին Բուրուշանդայի իշխանութեան դէմ (տես

(1) Պէտք չէ անտեսել սա իրողութիւնը թէ Հարաւ-Արեւելեան Եւրոպան, ուրկէ սկիզբ առած է Փոքր Ասիա թափող ժողովուրդներու մեծագոյն հեղեղը, Նոր-Քարային շրջանէն (4000–2500 Քր.է առաջ) սկսած ունէր որոշապէս Փոքր-Ասիականին ազգակից հիմնական ժողովուրդի խաւ մը։ (տես. Բրոֆ. Խաչատրեան. Հ. ս. ռ. պ, էջ 95)։



Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 292) որ ապահովաբար նման ժամանակին միւս իշխաններուն արգելք կը հանդիսանար վաճառականութեան, կը կողոպտէր և կը ձգտէր կղզիացնել այդ վաճառականները (նոյն էջ 293 և Sidney Smith. Early History of Assyria to 1000 B. C. 1928 էջ 149 և Քէմալէտտին էջ 186)։

Ահա այս ընթացքը առաջ կը բերէր միջամտութիւնը Բաբելոնին որ կը ներկայացնէր Միջագետքի գլխաւոր կեդրոններէն մէկը։

Անոր առընթեր Տիգրիսի միջին հոսանքին վրայ կը ծաղկէր Ասսուր քաղաքը, որուն երկրորդական մէկ ճիւղն էր Կանէշ Փոքր Ասիոյ մէջ (Բրոֆ. Խաչատրեան էջ 293), նոյնպէս Սեմական ծագումով։

Աքքատի Սարգոն բացի դէպի Փոքր Ասիա կատարած վերոյիշեալ արշաւանքէն՝ ուրիշ արշաւանքով մը, որուն նպատակն էր տիրել Կիլիկիոյ հանքերուն, կը հասնի Սիւրիոյ ճամբով մինչեւ Միջերկրական «մինչեւ մայրի անտառները և արծաթի լեռները» ինչպէս կ'ըսէ իր արձանագրութեանց մէջ։

«Մայրիի անտառները» հին Արեւելքի հռչակաւոր Լիբանանի և Ամանոսի մայրիի անտառներն են, իսկ «արծաթի լեռները» Կիլիկեան Տաւրոսն էր, ուր էին արծաթի հանքերը։

Կապադովկիան ու Կիլիկիան հնագոյն ժամանակներէն սկսեալ մետաղահանութեան կեդրոններ եղած են։

Գ. Հազարամեակին կէսէն Կիլիկիա ունէր պղնձի, կապարի, ոսկիի և արծաթի առեւտուր։

Իսկ Գ. Հազարամեակին վերջը Կապադովկիան էր պղնձագործութեան կեդրոնը, ուրկէ վաճառականութեան միջոցով կը տարածուէր Մերձաւոր Ասիա։

Կապադովկիոյ և Կիլիկիոյ, այսինքն Տաւրոսի երկու կողերուն վրայ, մետաղի արհեստագործութիւնը շարունակուեցաւ Նախահայեանց և Հայեանց պետութիւններուն ամբողջ տեւողութեան։

Ամառնայի նամակներու մէջ կան Ալաշիայի(1) իշխանին մէկ գիրը որով կը հաղորդէ թէ իր ուղարկած պղինձի քանակը այժմ քիչ է, որովհետեւ ժանտախտը կոտորած է հանքահան բանուորները։

Մասբերօ մեծ տեղ կուտայ Ալաշիայի պղնձի արտահանութեան Եգիպտոսի հրապարակին վրայ և պրոնզի մենավաճառը վերապահուած էր Ալաշիա=Աղձնիքին որ հնագոյն շրջանէն հռչակաւոր էր իր հարուստ ու լաւ տեսակ պղնձահանքերով (2)։ Այսպէս ուրեմն երեւան կուգայ Տաւրոսի շուրջը մետաղահանութեան ու մետաղի արուեստագործութեան համար՝ Կապադովկիոյ և Կիլիկիոյ առընթեր երրորդ կարեւոր կեդրոն մը։

Սարգոնէն մինչեւ Սալմանասար Գ. Միջագետքի թագաւորներու գլխաւոր նպատակներէն մէկը եղած է՝ տիրել այս կողմերու առեւտրական ուղիներուն և հասնիլ ծով։

Բաբելոնը, Եգիպտոսը, Կիլիկիան, Կապադովկիան և Ասսուրը առեւտրական ուղիներով իրարու հետ յարաբերութեան մէջ էին, և զե-

(1) Ալաշիան կը համապատասխանէ Ալշէն=Արշի= Աղձնիքին և ոչ թէ Կիպրոսին, ինչպէս կարծած են ոմանք։

(2) Արգնի հանքերը ցարդ նշանաւոր են։

կավարը՝ այս առեւտրական յարաբերութեանց սեմական ժողովուրդներն էին։ Այնպէս որ Գ. Հազարամեակէն սկսած՝ Փոքր Ասիոյ մէջ արդէն գոյութիւն ունէր բարգաւաճ քաղաքակրթութիւն մը՝ եռանդուն առեւտրական հաղորդակցութեամբ Սուրիոյ և Տիգրիս-Եփրատեան մեծ կեդրոններու հետ։

Թէ այս առեւտուրը տարածուած էր դէպի Եգիպտոս և Եգէականի կղզիները, շատ հաւանական է, թէպէտ չունինք հաստատ փաստեր։ (Բրոֆ. Խաչատրեան, նոյն, էջ 294)։

Սակայն անուրանալի է որ Խէթիներու (=Նախահայերու) երկիրը կը գտնուէր այն ցանցին մէջ որուն կեդրոնն էր Բաբելոն։

Հետեւաբար պէտք չէ զարմանալ թէ այս հնագոյն շրջանին երբ Նախահայերը կամ Խէթիացիները գերիշխող էին վերջէն Կապադովկիա կոչուած աշխարհամասին մէջ, Սեմական ազգաբնակութիւնը եւ զանազան գաղութներ հիմնած էր հոն։

Ասոր կառկառուն փաստը կուտան Գ. Հազարամեակին պատկանող Ակկատերէն կամ Հին-Ասուր քաղաքին բարբառով կաւէ տախտակները, մանաւանդ Կանէշ քաղաքէն, որուն սեմացի վաճառականաց դիւանը գտաւ Բրոֆ. Պ. Հրոզնի, իբր պետը Չեխոսլաւաք գիտական առաքելութեան մը, որ պեղումներ կատարեց 1925ին Քիւլթէփէի և Ալիշար Իւյիւկի մէջ։

Քիւլթէփէ փոքրիկ գիւղ մըն է և իր մօտը ունի մեծ աւերակաբլուր՝ Կեսարիայէն դէպի հիւսիս-արեւելք ըստ Բրոֆ. Խաչատրեանի 16 քիլոմէթր, ըստ Dr. G. Contenauի 20 քիլոմէթր և ըստ Հ. Տաշեանի 19 քիլ. հեռու։ (ՀԱ. 1933, էջ 425)։

Հոս կը կարծուի ըլլալ Կանէշ առեւտրական մեծ քաղաքին տեղը։

Կատարուած պեղումները երեւան հանեցին քաղաքին պալատներէն մին որ աւերուած ըլլալ կը թուի հրդեհէ մը (Արեւելք, թ. 505, 18 մարտ 1932)։ Այս շէնքին պատերը շատ հաստ էին (1 մէթր 50 էն մինչև 2 մէթր 30) շինուած, անկանոն կերպով յղկուած մեծազանգուած քարերով և հում աղիւսներով։ Բակին շուրջը կան բազմաթիւ սենեակներ։ Անտարակոյս այս պալատը այրած պիտի ըլլայ Քր. առաջ ԺԸ. դարուն երբ արշաւանք մը վերջ տուաւ Հայթեան թագաւորութեան։

Կռնակը այս շինութեան՝ կը գտնուէր ուրիշ մը աւելի նոր և շատ աւելի խնամեալ շինութեամբ։ (Dr. G. Contenau. La Civilisation des Hittites et des Mitaniens. 1934 էջ 64)։

Քիւլթէփէի մէջ չէ գտնուած ոչ մէկ պնակիտ։ Անոնք գտնուած են մօտաւոր մարգագետինի մը մէջ որ քիչ մը բարձր էր դրացի դաշտերէն, և ուր կը գտնուի այսօր Գարա-Էօյիւկ գիւղը։ (ՀԱ. 1933, էջ 425)։ Պեղումները հոս երկար չտեւեցին։ Գիտական առաքելութիւնը հոն գտաւ հում աղիւսներով շինութիւններու մնացորդներ և սենեակներու մէջ — որոնք յատակուած էին շուրջ եօթուկէս մէթր խորութեամբ սալաքարերով — 1000է աւելի պնակիտներ որոնք հանուեցան։

Ասոնք ամէնքն ալ գրեթէ Հին-Ասորեստանեան լեզուով և գոնէ մաս մը մեծ հնութեամբ (ԻԵ. դար Քր.է առաջ) և անշուշտ կարեւոր Մերձաւոր Ասիոյ պատմութեան համար, քանի որ կը վերաբերէին Կանէշի պէս վաճառաշահ քաղաքի մը, որ առեւտրական կապեր ունէր



ամէն կողմին հետ և մասնաւորապէս Միջագետքի հետ։ (Հ. Տաշեան. ՀԱ. 1933, էջ 426 և 1931, էջ 51)։

Այս պնակիտները իրարու վրայ դիզուած էին 10, 20, 80 և մինչև անգամ 250 հատնոց դէզերով, և խառնուած մեծ անօթներու կտորներու, ինչ որ կը հաստատէ թէ անոնք անօթներու մէջ դրուած էին։




**ՔԻՒԼԹԷՓԷԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԷՆ ՀԱՆՈՒԱԾ ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ՊՆԱԿԻՏՆԵՐ**
Բեւեռագիրները մեծցուած եւ լատինատառ ընթերցումը նշանակուած է:

Միեւնոյն ատեն կը հաստատուէր թէ «Կապադովկեան պնակիտները»,— որոնք այսպէս կոչուած են իրենց գտնուած նահանգին անունով, և այս կաւանօթները (céramique) իրարու ժամանակակից են։

Այս պնակիտները՝ իրենց բովանդակութեամբ են.

Ա.— Առեւտրական պայմանագիրներ՝ մեծ մասամբ դեռ իրենց կաւէ պատեաններուն մէջ, որոնց վրայ նոյնպէս դրուած են պայմանագիր կողմերուն վկաներուն և գրող դպիրին կնիքները.

Բ.— Այս «մակապատեան» գրութիւններու ընդօրինակութիւնը.

Գ.— Պատմական յուշագրութիւններ.

Դ.— Նամակներ։

Կատարուած քննութիւններ հաստատեցին թէ ընդհանրապէս իւրաքանչիւր սենեակի մէջ գտնուած վաւերագիրները կը վերաբերէին ամէնն ալ միեւնոյն անձին և իր ընտանիքին։ (Dr. G. Contenau, La Civilisation des Hittites et des Mitaniens, 1934 էջ 64)։

Այս սենեակները կը ներկայացնէին ուրեմն գրասենեակները այս կարող վաճառականներուն որոնք իրենց ձեռքին մէջ ունէին գաւառաշրջանի վաճառականութիւնը։

Ալիշարի պեղումները, սահմանակուած են Ալիշարի բլուրին տարբեր խաւերուն մէջ, որոնք իրենց կաւանօթներով և քանդակարուեստով կը վերաբերին Կապադովկեան պնակիտներու շրջանին։

Գիտական առաքելութիւնը նոյնիսկ գտած է այս խաւի վրայ պնակիտ մը կապադովկեաններուն նման, որուն վրայ կը յիշուի անունը Anitta-ի(1) մը, — պատմական անձնաւորութեան մը — որ կը հաստատէ թէ պնակիտը և խաւը՝ ուր անոնք գտնուեցան՝ շուրջ 2000 թուականին (Քր.է առաջ) կը վերաբերին։ (Dr. G. Contenau, նոյն, էջ 64)։

Նոյնպէս այս տախտակներէն կը հասկցուէր թէ կար կանոնաւորուած յարաբերութիւն — հաւանօրէն սուրհանդակային հաղորդակցութիւն — Ասսուր քաղաքին և Փոքր Ասիոյ կեդրոնին՝ հաւանօրէն Կեսարիոյ մօտերը հաստատուած Կանէշ քաղաքին և ուրիշ քաղաքներու մէջ հաստատուած առեւտրական գաղութներու միջև։ (Landsberger — Benno—Assyrische Handelskolonien in Kleinasien aus dem dritten Yahrtausend. տես Բրոֆ. Խաչատրեան, Հայ. Սեպ. Տրչ. Պատմ. էջ 297)։

Այս պնակիտներէն միայն երկուքը կը կրեն յիշատակութիւններ որոնցմով կարելի է ճշդել անոնց թուականը։ Մին նուիրուած է Ուրի Գ. Հարստութեան (2354-2238) վերջին թագաւորին Իպի-Սինի և միւսը Սարգոն Ա.ի(2) որ կ'իշխէր շուրջ 2000 տարի առաջ Քր.է։

Այս պնակիտները ուրեմն կը պատկանին առաւելապէս 2050է 1950 (Քր,է առաջ) ժամանակամիջոցի մը, սակայն անոնք կը ներկայացնեն քաղաքակրթութիւնը աւելի ընդարձակ շրջանի մը։ (Dr. G. Contenau, նոյն էջ 57)։

Այս պնակիտներուն լեզուն սեմական էր թէև ինչ ինչ մթութիւններ գոյութիւն ունէին դեռ։

Անոնք գրուած էին Աքքատերէն որ աւելի կը մօտենար հին Ասորեստանեանին քան Բաբելական լեզուին։ Յատուկ անուններէ ոմանք Սեմական են՝ մեծ մասամբ Ասորեստանեան դրոշմով, (յաճախ գործածուած ատեն կցուած Ասորեստանի Աստուծոյն՝ Ասսուրի հետ)։ Միւսները՝ Ասիական յատուկ անուններ են (տես Dr. G. Contenau նոյն էջ 57-58)։

Այս վերջինները կը կազմեն մեծամասնութիւնը։

Այս Ասիականները կը համապատասխանեն Նախահայերուն ըստ Contenauի և Խալթի կամ Խալթիացիներուն ըստ Նշան Մարտիրոսեանի և Սուբարուներուն ըստ Բրոֆ. Խաչատուրեանի։

Մասնաւորապէս տեղւոյ անունները կը հաստատեն թէ Փոքր Ասիան գրաւուած է առնուազն Գ. Հազարամեակէն սկսեալ Հաթի (Hatti) անունը կրող ժողովուրդներէ։ (Contenau նոյն էջ 62)։

Ասոնք այս տիտղոսին տակ երեւցող առաջին ժողովուրդն են

(1) Anitta կը համապատասխանէ Ֆորրերի՝ Անիտասս և Բրոֆ. Խաչատրեանի՝ Անիտաշ Կուշարացիին որուն պիտի հանդիպինք յետոյ։

(2) Պէտք չէ շփոթել Աքքատի Սարգոնին հետ։



որոնք ոչինչ ունին հասարակաց Հնդեւրոպեան Հաթ-Նէսերու հետ որոնք աւելի ուշ արշաւեցին դէպի Փոքր Ասիա։

Անձի և տեղւոյ Նախահայեան Halgia, Vashania, Timilkia, Alnhru անուններն բոլորովին կը տարբերին Հուրրի և Նէսեան անուններէն, բայց ոմանք կը յիշեցնեն ապահովաբար յատուկ անունները Նէսեան վեհապետներու (Dr. G. Contenau նոյն էջ 62)։

Այս պնակիտները կը հաստատեն թէ Կապադովկիոյ մէջ այդ դարուն քով քովի կ'ապրէին երկու ժողովուրդներ, մին՝ Ասիական, միւսը՝ Սեմական՝ թուի թէ նոյն իսկ Ասորեստանեան (նոյն էջ 58)։

Այս ժամանակամիջոցին Հաթեան բուն հայրենիքին կամ աւելի եւս ամբողջ Փոքր Ասիոյ մէջ, ուր կ'ապրէին նաև երկարագըլուխներ, կը գտնուէին Նախահայեր, Հնդիկեւրոպական Հայեր և Սեմացիներ, ձուլուած արդէն այդ հին ժամանակներուն իսկ ամբողջութեան մը մէջ (ՀԱ. 1932 էջ 172)։

Ի՞նչպէս պէտք է բացատրել Սեմական այս երկրորդ տարրին գոյութիւնը այսպիսի տեղի մը մէջ։

Մինչեւ հիմա ըստ Dr. G. Contenau-ի (տես էջ 58) կը կարծէին հոն տեսնել գաղութ մը որ Ասիականներու մէջ հաստատուած էր իբր առանձնաշնորհեալ, ինչպէս մեր օրերուն են եւրոպական ինչ ինչ գաղութներ Չինաստանի մէջ։

Այն իրողութիւնը թէ այս վաճառականներու հիմնարկութիւնները արտաքոյ քաղաքին էին և անոնք կրցած էին ունենալ երկար կեանք, կը թուին հաստատել այս վարկածը։

Սակայն ընդհանրապէս չէ ընդունուած այս տեսութիւնը։

Ասորեստանցիները հաստատուած էին Կապադովկիացիներու երկրին մէջ, որ ենթարկուած էր Ասորեստանի թագաւորին տիրապետութեան և տեղական իշխանները կը կիրարկէին ինչ ինչ իրաւունքներ ինչպէս հովանաւորեալ երկիրներու մէջ։

Այն իրողութիւնը որ Սարգոն կը կրէր տիտղոսը Ishakuի (փոխանորդ) կամ Waklumի (նախարար, պատուիրակ) թերեւս մեկնուած է իբր պարզ յիշատակութիւն մը որ պարտաւորուած է թագաւորը ներյացնել Աստուծոյ իբր արարողական յարգանք մը։ (Dr. G. Contenau, նոյն էջ 59)։

Բայց նաև կրնայ մտածուիլ իրական գերիշխանութեան մը վրայ, որ այս պարագային միայն կրնայ վերաբերիլ Բաբելոնեան հարստութեան թագաւորի մը՝ Ռիմ-Սինի որ նուաճած էր Ասորեստանը։ Բացի թագաւորէն (որ կը գործածէ Ishaku-ի տիտղոսը) և Waklum-էն, կը յիշատակուին rubaumներ, տեղական իշխաններ, որոնց թիւը կը թուի թէ բաւական շատ էր, իւրաքանչիւր քիչ մը կարեւոր քաղաքի մէջ, անոնցմէ հատ մը գտնուելով։ (Նոյն էջ 59)»

«Կ'երեւայ թէ այս քաղաքները ունէին ներքին ինքնավարութիւն իրենց գործառնութիւններուն համար։ Անոնք ունէին քաղաքապետարան-տուն (bit alim)(1), ուր կը կատարուէին առեւտրական պաշտօնական գործողութիւններ՝

(1) Ըստ Սմիթի «քաղաքային տունը» (the House of the City) կարող էր ըլլալ համայնքին առեւտրական կեդրոնը։ Ամէն պարագայի կը հասկցուի թէ մարմին մը կը ներկայացնէր քաղաքին իշխանութիւնը

օրինակ դրամական փոխառութիւն ու գրաւներու պահպանութիւն եւայլն, որոնք կը կատարուէին պարբերաբար փոխուող պաշտօնեաներու (limmu) ձեռքով(2): Կար նաեւ օրինական խնդիրներ քննող եւ կարգադրող առանձին պաշտօնեայ: Գաղութ-առեւտրական համայնքները կապուած էին մայր քաղաքին՝ Աշուրին եւ Կանէշին:

Հաշիւները կը պահուէին սեպագրական դրութեամբ:

Այս գաղութները կամ վաճառականական համայնքները՝ նման Միջին-դարու Ջենովայի եւ Վենետիկի համայնքներուն՝ կը կոչուէին Karum, որ իր ստուգաբանութեամբ կը նշանակէր «նաւահանգիստ»(3): Այս համայնքներու գլխաւոր ներկայացուցիչները կը գտնուէին Աշուրի մէջ եւ շատ-կանոնաւոր հաղորդակցութեամբ ուղղակի կապուած էին գաղութ Karumներու հետ: Այս պայմաններու մէջ արդէն Աշուրի մէջ կազմակերպուած էր վաճառականի դաս: Առեւտրական գործառնութեանց բոլոր վէճերը կը բերէին այս Karum համայնքներու ատեանին, որուն որոշումները պարտադիր էին կողմերուն համար:

Ան կ'որոշէր տոկոսի սակը, կը մասնակցէր հագուստի վաճառքին եւ այս նպատակին համար կը վերցնէր կանխավճար: Շատ կարեւոր հիմնարկութիւն էր համայնքի-տունը (Bit Karum) իբր դրամատուն՝ պանք, որ կը պահէր դրամական ու ապրանքային հաշիւներ եւ իբր կեդրոնական հիմնարկութիւն՝ մասնաւորաբար կը կատարէր պղնձի առ ու ծախ: Ան կ'ուղարկէր դատական քննիչներ գաղութ-համայնքներու գործերը քննելու եւ վէճերը լուծելու համար:

Բացի այս համայնական հիմնարկութիւններէն՝ քաղաքներուն մէջ կային նոյնպէս tamkarum՝ հայերէն «թանգար» կոչուած (թուջար կամ բեջեր) մեծ դրամատէրներ, որոնք տոկոսով՝ փոխ դրամ կուտային ճամբորդ վաճառականներու: Ասոնք առեւտրական զանազան կեդրոններուն մէջ ունէին իրենց լիազօր ներկայացուցիչները՝ թէ՛ իրենց գործերը վարելու եւ թէ՛ դատական խնդիրներու մէջ փոխանորդելու իրենց տէրերը: Այս լիազօրները պարտաւոր էին պահել եւ մուտքի մատեան ու որոշ ժամանակներ անոր բովանդակութիւնը հաղորդել կեդրոն, ուր կը պահուէին դիւաններուն մէջ:

---

*քըր հակադիր Թագաւորին և իր արքունիքին կեդրոնական կառավարութեան։*

*Կարելի է ենթադրել թէ ան վերապրումն էր հնագոյն հիմնարկութեան մը որ կ'անհետանար նախ քան Ը. դարը, որովհետև վերջին պայմանագիրներու մէջ այլեւս չկայ յիշատակութիւն «քաղաքին տան»։*

*Հաւանական է որ Բ. Հազարեակի վերջին դարերուն աճած էր Թագաւորին միջամտութիւնը վաճառականական գործերու մէջ։* (Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. *էջ* 299)։

(2) Limmu*ները անուանադիր* (éponyme) *պաշտօնատարներ էին, որոնք իրենց անունը կուտային ոեւէ ժամանակամիջոցի, որ տարիներ չէր ինչպէս Ասորեստանի մէջ, այլ շաբաթներ կամ յաճախ* «quintaine» *(=հնգօրեակ)ներ։* (Dr· G. Contenau, *նոյն, էջ* 59)։

(3) Karum *ըստ* Dr. G. Contenau-*ի իր նախնական իմաստով կը նշանակէր* քարափ, *տեղի ուր կը մթերուէին ապրանքները*: Dr. G. Contenau (*նոյն, էջ* 60) *այս բառովը կը հասկնայ տեսակ մը առեւտրական սենեակ, որ կը սահմանէր գիները և կը կարգադրէր վաճառականական վէճերը։*



Վճարումները կը կատարուէին միայն ոսկիով ու արծաթով, թէպէտեւ ըստ երեւոյթին ոսկին միայն մեծ գումարներու համար. Կապարը(1) կը համարուէր իբր ապրանք, բայց հաւանական է, որ փոքր գումարներու համար գործածուած է իբր առձեռն արժոյթ (վալուտա): Ոսկին ու արծաթը միշտ չէին կշռեր, երբ վաճառականական նոյն ընկերութեան կամ ծանօթներու միջեւ կը փոխանակուէր, այլ կ'ուղարկէին ամաններու մէջ կնքուած եւ այսպէս կը պահէին իբր աւանդ:

Ոսկին (երբեմն նաեւ արծաթը) որոշ ծանրութեամբ մը մեծ մասամբ կէս եւ երկու երրորդ մին (2). շղթայի վերածուած կը դրկէին. իսկ արծաթն ընդհակառակը տեսակ մը կիրարկելի ձեւով մշակուած կը փոխարինէին՝ 4—15 մին ծանրութեամբ:

Իբր վաճառքի ապրանք կար անգուածեղէն եւ իբր կարեւոր առեւտրական ապրանք կը համարուէր anakum «անագը»: Թէեւ anakum ասորերէն կը նշանակէ «կապար», բայց հաւանօրէն բուն մեր «անագն» ալ հետը կը հասկցուէր: Կապարի եւ արծաթի յարաբերական արժէքը կը տարբերէր 3 ու կէս=1 եւ 6=1 համեմատութեան միջեւ, սովորական գինը կը թուէր մօտաւորապէս քառորդ մին:

Բոլորովին այլ էր, առուծախը պղնձին, որ կապարին եւ անգուածեղէնի հետ ամենակարեւոր արտածական ապրանքն էր մետաղներով հարուստ Փոքր Ասիոյ: Պղինձն մասնաւոր առեւտրականներէն չէր գնուեր. այլ կեդրոնական վաճառորդ համայնքներէն: Կար պղնձի երկու տեսակ՝ լաւ ու գէշ. առաջին տեսակը արծաթի հետ համեմատած՝ 25 = 1, իսկ երկրորդը՝ 55 = 1 համեմատական արժէքով, բայց ընդհանրապէս արծաթը 1/45 — 1/60 արժողութեամբ:

Անգուածեղէնը նոյնպէս կարեւոր տեղ կը գրաւէր վաճառելի ապրանքներու շարքին: Ասոնք կը ծախուէին կտորներով հագուստին երկարութեան չափով կըտ-

---

(1) *Ըստ Սմիթի դրամական փոխանակութեան* (exchange) *ամենասովորական նիւթը Ասորեստանի մէջ* (1400–1050) *ոսկին կամ արծաթը կամ պղինձը չէր, այլ կապարը. ազնիւ մետաղներու գործածութիւնը շատ քիչ էր։ Կապարի գործածութիւնը կը կատարուէր մեծ մասամբ կտորներով՝ վրան տեսակ մը կնիքով դրոշմուած։*

*Այս տեսակ կտորներու օրինակներ գտնուած են տաճարի մը մէջ Տուկուլտի-Ենուրտայի ժամանակէն* (1250–1240)*։ Սակայն այս կապարի կտորներուն հետ միասին գտնուած են նաև կապարէ զարդեր և քանի մը դրամաձև բոլորակներ, որոնց վրայ կաղապարուած են զանազան տեսակ նկարներ և երբեմն ալ մարդու կեանքին անպարկեշտ տեսարաններ։ Պեղում կատարողներու կարծիքով այս բոլորակները կը ծառայէին իբր յիշատակ կամ շանսխուր վարձագին տաճարի* Hiorodule *կանանց համար...։* (Հայաստանի սեպ. շրջ. պատմութ. 299)։

(2) Min· *յուն.* mna *լատ.* mina *հայ. մնաս.— Հին յունական կշիռ եւ դրամ=* 1/60 *տաղանդ կամ* 100 *դրախմին. եգեան* min.= 617 gr. *ոսկիով=* 108 *գերմ. մարք. եւրոպ.* min= 437 gr· =75 *մարք։*

*Մինը ըստ* Dr. G. Contenau-*ի կ'ստորաբաժնուէր* 60 *սիկլներու (շիկել)։ Մինը կը համապատասխանէ մօտաւորապէս արդի կէս-քիլոկրամին։*

ռուած, իւրաքանչիւր կտորը նայելով կերպասի ազնուութեան, կը գնահատուէր մէկէն 1—15 եւ 20 շիկել(1)։

Սեւ կերպասը (Šuru) մէկ Kusitu «քուսիթա» կանանց երկար հագուստ՝ 7 շիկել, մէկ chitou «վերարկու»՝ 15 շիկել. լաւագոյն երպասը մինչեւ 20 շիկել։

Բացի այս երեք տեսակ վաճառքի ապրանքներէն՝ առուծախի նիւթ էին կաշին, պղինձէ անօթներ, քիչ անգամ զարդեղէններ, ամաններ եւ անուշահոտ իւղեր, վերջին տեսակի ապրանքները թերեւս կազմէին ներածական վաճառք Փոքր Ասիոյ համար, որոնք կը գնուէին Ասուրի շուկայէն։

Ապրանքներու տեղափոխութիւնը կը կատարուէր կարաւանով(2). որուն կ'ընկերանային սուրհանդակները։ Քիչ անգամ կառք՝ մասնաւորաբար ամանեղէնի համար։ Կը թուի թէ դէպի Ասուր կ'օգտուէին նաեւ Տիգրիսի նաւարկութենէն։ Մէկ էշը կ'արժէր 1/3 մին արծաթ եւ կը վերցնէր 3 տաղանդ (= 90 քիլոկրամ) բեռ։

*Վարկը* որ վաճառականութեան մէջ շատ մեծ դեր կը կատարէ, նոյնպէս կազմակերպուած էր։ Վարկը կը տրուէր դրամ (արծոյթ) փոխ տալու ձեւով։ Փոխ տրուած գումարին վրայ՝ կ'աւելցնէր շահը կամ տոկոսը։

Փոխ առնուած գումարին քանակը բնականաբար շատ տարբեր կ'ըլլար՝ բարձրագոյնը 50 մին (=մօտ 25 քիլօկրամ) արծաթ։ Տոկոսը կը նշանակուէր պարտամուրհակով՝ ամսական՝ մէկ մինի համար մէկուկէս շեկել, այն է տարեկան 30 տոկոս։ Ասկէ տարբեր տոկոսներ ալ կային՝ այսպէս թանգարներէն փոխ առնուածին համար Karum-ը կը վճարէ միայն 11/12 շեկել ամսական մէկ մինի համար։

Ասորեստանեան վաճառականներու միջեւ կատարուած այս փոխատուութիւններէն տարբեր է Փոքր Ասիական տեղական ժողովուրդներու մէջ կատարուածը նախ՝ անոնց մուրհակները աւելի անխնամ գրուած են, կը պակսի պայմանաժամը՝ ամսուան անունով նշանակելը, այլ ըսուած է «մի ամիս», «երկու ամիս» կամ «մի քանի ամիսէն վճարելի», աւելի բարձր տոկոս՝ ամսական մէկ մինի համար երկուքուկէսէն վեցուկէս շիկել։ Բնորոշ է նաեւ ազգականներու ներմուծումը իբր հաւաքական պարտապան, փոխանակ համուրդի՝ պայմանաժամի յետաձգման՝ ձերբակալման սպառնալիք, անգամ մըն ալ փոխանակ տոկոսի պարտապանի աղջիկը իբր սպասման գրաւ։

*Պարտազերծումը* կը կատարուէր նոյնպէս առանձին գրութեամբ։

Ահա օրինակ մը այս տեսակ գրութեան. «վեցուկէս շիկել (սեկել) արծաթը, որ A պարտ էր Bին, այս դրամը ստացաւ B։ B ապագային այլեւս ոչինչ չունի պահանջելու, եթէ այս պարտքին վերաբերեալ տախտակ մը երեւան գայ, կեղծուած է»։ Landsberger Benno—Assyrische Handelskolonien in Kleinasien

---

(1) Shekel *«սիգել-սիկղ» — եբրայական կշիռ ու դրամ։ Սովորական սիկղը՝ ոսկիի համեմատութեամբ* = 252 *երկու երրորդ հատիկ կշիռով, արծաթի՝* 224 *ու կէս հատիկ։*

(2) *Ըստ* Dr. G. Contenau*ի բուրդեղէններ և ուրիշ ապրանքներ — որոնց մէջ են մետաղները — կը ղրկուէին էշուն կռնակով։ Այդ ապրանքները կը ծախուէին ճամբան և անոնց տեղը կը դրուէին ճամբուն վրայ գտնուած երկիրներուն վաճառքները որոնք կը ծախուէին վերադարձին։* (La Civilisatlon des Hittites et des Mitaniens. 1934 *էջ* 60)։



aus dem dritten Yahrtauscnd.—AO. 24-4-1925 *կամ Բրոֆ. Խաչատրեանի* Հայաստանի սեպ. արձ. պատմ. *էջ* 297-304)։

*Կապադովկեան պնակիտները՝ որոնց բովանդակութենէն քաղուած են վերոգրեալ տողերը, ինչպէս կը տեսնուի մեզի կը ներկայացնեն սովորութիւններ որոնք մեծ առընչութիւններ ունին Ասորեստանեաններուն հետ,* (Dr G. Contenau. *Նոյն էջ* 59) *վասնզի այս կազմակերպուած առեւտուրին յիշատակարանները կը վերաբերէին Ասուրի, Կանէշի և ուրիշ Ասորեստանեան գաղութներու, տեղական ժողովուրդներու վրայ ալ տեղեկութիւններով ճոխացած։ (Բրոֆ Խաչատրեան,* նոյն, *էջ* 304)։

*Կանէշ (=Քիւլ Թէփէի) մեծ ֆիրմաներուն մէջ էր* Pusukin-*ը, որուն նամակներու պատճէնները գտնուած են (տես* P. Vander Meer. «Une correspondance commerciale assyrienne de Cappadoce Rome 1932. *և* Golenischeff Vingt-quatre tablettes Cappadociennes.)։

*Նշանակելի է որ, այս պնակիտներուն մէջ տոկոսը նշանակուած է երբեմն ամիսով փոխան տարիով ըլլալու դարուն սովորութեան համաձայն և յաճախ տոկոսին գնահատութիւնը, —երբ գումարը որոշուած ժամանակին չէ վճարուած— ձգուած է* Karum-*ին, որ պէտք էր շարժէր սովորական սակացոյցին համաձայն և կամ օրուան սակով (Նոյն էջ* 62)։

*Նոյնպէս նկատելի է որ Կանէշի մէջ կիրարկուած տնտեսական և առեւտրական դրութիւնը շատ աւելի բարդ էր քան Բաբելոնեանը։ (Բրոֆ. Խաչատրեան Նոյն էջ* 293)*, վասնզի Կապադովկեան հարուստ մետաղահանքերուն արդիւնաբերութիւնը և մետաղեայ առարկաներուն առեւտուրը առաջ բերած էր վաճառականական բարդ դրութիւն մը որ յայտնի է թէ չէր կրնար առաջ եկած ըլլալ կարճ ժամանակամիջոցի մը մէջ, այլ դարերու ընթացքին այս զարգացման կրնար հասնիլ (Նոյն)։*

*Ասոնք բոլորը ցոյց կուտան թէ Խէթի երկրին մէջ ստեղծուած էր իսկական վաճառականական գաղութ մը, որ ոգեւորեալ գործունէութեան մէջ էր։*

«Սեմական այս համայնքին կարեւորութիւնը ուրեմն պէտք չէ ստորնագնահատել։ Հաւանական է որ ան մնաց տեղւոյն վրայ եւ ձուլուեցաւ Ասիականներէն երբ իր քաղաքական անկախութիւնը վերջ գտաւ։ Ամէն պարագայի մէջ, յիշատակը երկար ապրեցաւ։ Մենք զայն վերստին կը գտնենք անտարակոյս Սպիտակ Ասորիներու (Leuco-Syrien) յիշատակութեան մէջ, զորս նախնիք կը զետեղէին Փոքր Ասիոյ մէջ»։ (Dr. G. Contenau. La Civilisation des Hittites et des Mitaniens. *էջ* 60)։

*Շատ իրաւամբ* Leopold Woolly *ասիկա կը նկատէ չափանիշ մը Նախահայեան քաղաքակրթութեան զարգացման։*

*Անիկա կ'ըսէ թէ* «Քսան եւ չորս դար Քրիստոսէ առաջ անոնք պէտք է արդէն շատ քաղաքակրթուած ըլլան, որովհետեւ անոնց մէջ հաստատուած էր Միջագետքէն եկած առեւտրական գաղութ մը (Կանէշ-Քիւլթէփէ) որուն արձանագրութիւնները ցոյց կուտան թէ իրենց երկիրը այն ժամանակէն սկսեալ շատ լաւ կազմակերպած էր վաճառականական մեթոտները եւ օրէնդրական զարգացած դրութիւն մը»։ (Carchemisch of the Hittites.— Wonders of Past. III. 559-568)։

*Արդարեւ անոնք այդ պատկառելի հնութեան մէջ ցոյց կուտան բաւական զարգացած քաղաքակրթութիւն մը։*

Ընկերային տեսակէտով փոքր Ասիական այս ժողովուրդը հաւա-
նօրէն կազմակերպուած էր գերակշռօրէն «մայրական իրաւունքով», քանի որ ընտանեկան այս ձեւը տիրապետող ձեւը եղած է Փոքր Ասիոյ մէջ և Եգէականի եզերքը նախ քան Հնդ-Եւրոպացւոց ներխուժումը։

Kornemann Միջերկրական ծովու շրջանին մէջ, մինչև Ասիոյ խորը՝ հետքեր գտած է մայրական իրաւունքի իշխանութեան (Matriarcat)։

Ան կ'ընդունի թէ այս սովորոյթը Նախհնդեւրոպական ժողովուրդներու յատուկ՝ ընկերային կանոնադրութիւն մը եղած է, որուն ինչ ինչ մասերը որդեգրեց Ներգաղթող – տիրող ժողովուրդը և պահպանեց երկար ատեն (Հմմտ. Բրոֆ. Խաչատրեան Հայ. սեպ. շրջանի պատմ. էջ 110)։

Դալով պետութեան՝ ան կազմակերպուած էր դաշնակցային հիմի վրայ։ Պետութիւնները իրարու զօդող էական պայմանը զինուորական օգնութիւնն էր։

Ամէն երկիր ունէր իր զինուորական կազմակերպութիւնը և բանակը։

Զինուորները կանոնաւոր կերպով զինուած էին, ծայրը երկաթ նիզակներով, երկայրի տապարներով և երկար դաշոյններով և սուրերով, և կը կրէին երկար գտակ մը՝ ծայրը սուր։

Երկիրը ունէր կանոնաւոր օրէնսդրութիւն։ Թագաւորը կը վայելէր կենաց և մահու իրաւունք։ Ո՛վ որ անոր դէմ կ'ելլէր, ընտանեօք կը բնաջնջուէր։



Կեսարիոյ թանգարանը պահուած Բիւլթէփէի պեղումներու ատեն գտնուած Հաթ պատերազմիկի քանդակ

Ամուսնութիւնը երկու կողմերու լիակատար համաձայնութեամբ կրնար կնքուիլ։ Ամուսինը պարտաւոր էր իր կնոջը նուէր տալու։ Կնոջ ազատութիւնը յարգուած էր։ Կիները կը մասնակցէին նոյն իսկ պատերազմի և պետական գործերու։ Տեսնուած է որ թագուհին՝ թագաւորին հետ դաշնագիր ստորագրած է։ Գտնուած է նաեւ կին զօրավարի մը արձանը։

Կալուածատէր ըլլալու համար զինուորական ծառայութիւնը պայման էր։

Գողութիւնը խստիւ կը պատժուէր։ Հաթերը՝ ինչպէս ուրիշ մարզերու նոյնպէս նաեւ օրէնսդրական կազմակերպութեան մէջ մեծապէս օգտուած էին Սումերներէն։

Կապադովկեան պնակիտները և մանաւանդ անոնց պահպանակները զարդարուած են կնիքներու բազմաթիւ փորագրութիւններով, որոնք կրնան ծառայել իբր հիմ անոնց քանդակարուեստին (glyptique) ուսումնասիրութեան։

Երբ պնակիտները կը ներկայացնեն պայմանագիր մը կամ նամակ մը, եփուելով կարծրացուած էին և ծածկուած՝ կաւէ պատեանով կամ պահպանակով մը որուն վրայ դրոշմուած է պայմանագիր կողմերուն կնիքները։ Այս պահպանակին վրայ կը նշանակէին՝ նաև պայմանագրութեան համառօտութիւնը և եթէ նամակ էր ստացողին հասցէն (Dr. G. Contenau, նոյն էջ 65)։

Անոնք կը գործածէին իբր կնիք քարէ գլանիկներ, մանեակներու մարգարիտներու պէս ծածկուած իրենց երկարութեան։

Այդ գլանիկներուն շրջապատին վրայ ուռուցիկ պատկեր մը գրծուած էր։ Երբ այս գլանիկը կակուղ հողին վրայ գլտորէին հոն կը վերարտադրուէր ցցուած նախակաղապարը։

Նշանակելի է որ կնիքի կիրարկութեան այս ձեւը, բոլորովին ինքնատիպ՝ գործածուած է ամէն սեմական կամ սեմականացած ժողովուրդներէ։ (Dr. G. Contenau, նոյն էջ 65)։



ՀԻԽՍԱՔԱՆԴԱԿ ԳԼԱՆԻԿՆԵՐ

Հետեւաբար յայտնապէս Կապադովկիոյ մէջ երեւան կուգայ Սումերեան ազդեցութիւն մը, որ Մերձաւոր Ասիոյ մէջ գերիշխան եղած է պատմական շրջանի սկզբնաւորութենէն (շուրջ Քր.Ե առաջ 3000 թուականներէն)։

Միայն թէ Կապադովկեան գլանիկները աւելի խիտ ու բարդ արուեստ մը ունին բաղդատմամբ արքայիկ Սումերեան գլաններու, ինչպէս ձեռնահասօրէն կը բացատրէ Քոնթընօ, (նոյն, էջ 66)։

Նաև Կապադովկեան գլաններու վրայ կը դիտուի կենդանիներու նկարչութեան գերազանցութիւն մը որ առանձնաշնորհը պիտի ըլլար բոլոր հին Արեւմտեան Ասիոյ (նոյն, էջ 67–68)։

Այս գլաններու վրայ տեսնուած քանդակարուեստը թաթաւուն հին Սումերական ներշնչումներով (իր կարգ մը motifներուն նոյնութեամբ միայն քիչ մը խառնակ յօրինուածով) և Սումեր–Աքքատ ժամանակակից արուեստէն ազդուած (նկարներ մերկ աստուածուհիներու և այլն), ցոյց կուտայ դարձեալ բազմաթիւ մասնայատկութիւններ որոնք կը կազմեն Հաթեան գարաշրջանին առանձնայատկութիւնները, ինչպէս նկարները ցուլ-բագիններու, քալելու դիրքին մէջ պզտիկ անձնաւորութիւններու, կենդանիներու վրայ հեծած աստուածներու։

Կապադովկիոյ սեմական բնակչութեան գլաններու արուեստը ենթարկուած է միջավայրին ուր մշակուած է։ Այնպէս որ նկարիչները նկատի կ'առնեն անզական տարազները և ճաշակը, որոնք աւելի ուշ,

զարգացած պիտի գտնենք Հայթեան արուեստին մէջ, որուն մշակու-
թիւնը այս դարէն կ'սկսի։
Քիւլթէփէի, Իւրիւքի և մանաւանդ Ալիշարի պեղումներու միջո-
ցին գտնուած են Քր.է առաջ Դ. Հազարամեակէն քանդակներ որոնց
մէջ տարազները ամէնէն ուշագրաւն են։
Անատոլուի բարձրաւանդակին խիստ կլիմային պատշաճելով ան-
չուշտ երկար վերարկուներ ունին մարդիկ և սուր երկար գլխանոց։
Այսօր դեռ Կեսարիոյ մէջ կը գործածուին ՔԷՄԻՆ կոչուած տեսակ
մը ծայրը վեր դարձած կօշիկ որ Հայթեան կաւէ շինուած կօշիկները
կը յիշեցնէ։ Չարըգ կոչուած կօշիկներն ալ նոյն նմանութիւնը կը բե-
րեն։
Նոյնպէս Անատոլուի, մանաւանդ Կեսարիոյ գիւղերը մինչև հիմա
հագնուած ապան Հայթ տարազին շատ կը նմանի։
Ալիշարի մէջ պատի մը վրայ գծուած երկանիւ կառքի մը պատ-
կերը՝ Անատոլուի մէջ ցարդ գործածուած ԲաղՆի կառքերուն ճիշդ
նման է։ (Քէմալէտին, էջ 137)։
Նոյնպէս նկատելի է առանց մատի երկայն ձեռնոցը՝ որուն միայն
բթամատը զատուած է ձեռնոցին մնացորդ մասէն որ պարկի ձեւ
ունի, որուն մէջ մնած են չորս մատերը, շատ մը Հայթեան քանդակ-
ներու մէջ կը տեսնուի և որ այսօր ալ գործածական է Կապադովկիոյ
գիւղացիներուն մէջ (Բրոֆ. Ա. Հ. Սէյս, Քեսացիք կամ մոռցուած կայս-
րութեան մը պատմութիւնը. Թրգ. Հ. Վ. Ցակոբեան, Բարիզ, 1900 էջ 52)։
Անկէ զատ նաև ուրիշ առարկաներ որոնք կաւէ շինուած կամ
թրծուած են շատ կը յիշեցնեն այսօր գործածութեան մէջ եղածնե-
րը։ Հայթեան ճրագներուն նման լամբարները այսօր ալ դեռ կը գոր-
ծածուին Փոքր Ասիական գիւղերուն մէջ, (Տօքթ. Նշան Մարտիրոս-
եան, Արեւելք, Թ. 5?9, 22 մարտ 1933), նոյնպէս նաև բղուկները,
պտուկները, սափորները, կուժերը, պնակները, գաւաթները, շիշի
ձեւով կաւէ ամանները, շատ մեծ տարբերութիւն մը չունին այսօր
գործածութեան մէջ եղած առարկաներէն (նոյն)։
Դառնալով Նախահայթեան կամ Փոքր Ասիոյ Նախաբնիկներու քան-
դակարուեստին՝ ամէնէն շահեկան խումբը, կնիքները, կը տեսնենք
Կապադովկեան պնակիտներու վրայ։
Առհասարակ անոնք կլոր են, յաճախ պզտիկ տրամագիծերով,
և իրենց փոքրութեան պատճառով, բաւական պարզ մոթիֆներով,
ինչպէս ոլորտագիծեր, արծիւներ մէկ կամ երկու գլուխներով՝ հիւս-
ուած շրջանակի մը մէջ առնուած, մէկ ոտքի վրայ թառած թռչուն
մը որուն գլուխը և կտուցը թռչունին իւրաքանչիւր կողմը կրկնուած
է, կը ձգտին կազմել ոճաւորուած և զարդանկարչային motif մը։
Երբեմն նաև, երբ կնիքին տրամագիծը մեծ է, հոն կը ներկայաց-
ուին անասունները խառնակ ծամերով, և այս վերջին գիծերը իբր
իմաստ եթէ ոչ իբր ոճ, մեզի կ'առաջնորդեն արքայիկ Սումերեան
արուեստին։ (Dr. G. Contenau. նոյն, էջ 71)։
Ահա այն քանդակարուեստը որուն երկու տեսակները՝ գլանները
և կնիքները կը յարատեւեն գոյութիւն ունենալ Հայթերու բովանդակ
պատմութեան ընթացքին, ներկայացնելով մին՝ Սումերական ներ-
գործութիւն մը Սեմական-Ասիական միջավայրի մը մէջ, միւսը ասի-
ական ներգործութիւն մը։ (Dr. G. Contenau, նոյն, էջ 71)։



Խիստ հետաքրքրական է որ Քիւլթէփէի աւերակներուն տակէն հանուած մէկ քանի կաւէ ու քարէ պնակիտներու և գլանակնիքնե-րու վրայ շատ գեղեցիկ կերպով քանդակուած է Փոքր Ասիոյ Հայթե-րուն ծիղով (շիւղով) կաւէ ամաններէ գարեջուր խմելը ճիշդ Քսե-նոփոնի հայ գիւղացիներու համար նկարագրածին պէս(1)։ (Տօքթ. Ն. Մարտիրոսեան, Արեւելք, Թ. 5?9)։

G. Contenau, իր գոր-ծին մէջ կը խօսի նաև իտօլներու (idole) վրայ որոնք ալապաստրէ, կամ քարէ կամ մետաղէ բոլորշի պնակէներ են, 0.05էն մինչև 0,22 մէթր տրամագիծով։



ԳԱՐԵՋՈՒՐ ԽՄԵԼՈՒ ՏԵՍԱՐԱՆ
ՔԻՒԼԹԷՓԷ ԳՏՆՈՒԱԾ

Ամէնէն պարզ տի-պարը զարգարուած է գրեթէ գլանաձև յաւել-ուածով մը որ կը վեր-ջանայ եռանկիւնաձև մասով մը։ Անոնցմէ ոմանց կցուած են երկու և նոյնիսկ երեք կցորդներ։

Ընդհանուր կերպով անոնք կուտան չափազանց պարզ ձեւի մը մէջ, մարդու մը մարմնոյն ձեւը, երկրաչափական գիծերով, պատ-րանքը տալով իրանի մը, երկար վիզի մը և գլուխի մը։ Անոնք կը

---

(1) Ե. Մեյեր, (Reich und Kultur, 55) կ'ըսէ թէ «Քիւլթէփէի մէջ գտնուած է օձաքարի (Serpentin) մի գլանակնիք։ Գլխաւոր տեսարանը կը ներկայացնէ երկու մարդ, որոնք իրենց առջև դրուած ամանէն գարեջուր կը ծծեն երկար եղեգնափողերով։ Այս նոյն տեսարանը պահպանուած է Բաբելոնեան գլաններու վրայ ամենահին ժամանակ-ներէ սկսած։ Ասոր հիմքը կազմող սովորոյթը կը նկարագրէ Քսենե-փոն հաղորդելով՝ Արմէններու մասին, թէ անոնք քաղցր գարեջուրը ամաններէն կը խմէին։ Գարեհատիկները կը լողային գարեջուրին երեսը. ամանի մէջ դրուած էին հանգոյցազուրկ եղեգնափողեր մեծ ու փոքր, որոնցմով պէտք էր ծծել, երբ ուզէին խմել։ Արքիլաքոս միևնոյն սովորոյթը գիտէ Թրակացիներու ու Փռիւգներու մէջ, իսկ եգիպտական մի գեղեցիկ տապանաքար այժմ Բեռլինի թանգարանին մէջ, ԺԴ. դարուն սկիզբէն՝ կը ներկայացնէ Սուրիացի վարձկան զին-ուորը եգիպտական ծառայութեան մէջ, որ նստած հանգիստ կերպով կը ծծէ իր գարեջուրը։ Ասով ուրեմն մենք գործ ունինք ամբողջ Նա-խասիոյ մէջ տարածուած մի սովորոյթին հետ, որը առաջին անգամ Բաբելոնեան յիշատարաններու վրայ և ապա երկու հազար թուին այստեղ Կապադովկիոյ մէջ մեզի կը ներկայանայ։ Որովհետև՝ թէ Քիւլ-թէփէի գլանը տեղական գործ է, կ'ապացուցուի բացի գործին բիրտ լինելէն և իրերու կուտակումէն՝ գիսակ-ցցունովը, որ կը կրեն եր-կու մարդիկը, որոնք բոլորովին կը համաձայնին Հայթեան զօրքերու կառամարդիկներուն»։ (Բրոֆ. Խաչատրեան, Հայաստանի սեպ. արձանի պատմութիւն, էջ 1?2-103)։

ներկայացնեն անշուշտ գերբնական հոգիները կամ անոնց խորհրդանիշն են։ Մասնաւորապէս այս եզրակացութեան հասած են գիտունները զանոնք բաղդատութեան դնելով ուրիշ շրջանակներու մէջ գտնուած նման հնութեան առարկաներուն հետ, ինչպէս Արշիպեղագոսի ջութակաձեւ իտօլներուն կամ Քիշի կամ Շօշի երկունկանի անօթներուն վրայ նկարուած պատկերներուն հետ, որոնք կը նմանցնեն մարդակազմական ինչ ինչ մանրամասնութիւններով, մարդու մը պատկերը։



ՔԻՒԼԹԷՓԷՆ ՀԱՆՈՒԱԾ ԻՏՕԼՆԵՐՈՒ ՀԱՒԱՔԱԾՈՆ,
ՊԱՀՈՒԱԾ ԿԵՍԱՐԻՈՅ ԼԻՍԷՆ

Անոնք կը թուին ներկայացնել իգական և մասնաւորապէս բեղմնաւորութեան և արգասաւորութեան Մեծ Աստուածուհին։

Անատոլեան իտօլներու վրայ, կամարաձև ակօսները կը հաստատեն գոյութիւնը տարազներու կամ պաճուճանքներու ստուերագիծի մը։

Անոնցմէ ոմանց իրանին վրայ գծուած է պզտիկ իտօլ մը բոլորովին նման մեծին։ Ասիկա կը պատկերացնէր անշուշտ մանուկը զոր Աստուածուհին կը դիեցնէր։

Կարգ մը իտօլներ իրենց կռնակը ունին կտոր մը զարդանկարուած ակօսներով որոնք ծածանող վարսերը նշանակել կը թուին։ (G. Contenau նոյն էջ 72)։

Այս առթիւ կարելի է հաւասարապէս յիշել Անատոլեան ճաշակը կապարէ աստուածներու պզտիկ խումբերուն, որոնց բաւական թուով քարէ կաղապարները գտնուած են (G. Contenau նոյն էջ 73)։

G. Contenau (Idoles de pierres provenant de l'Asie Mineure dans Syria 1927 էջ 193) ինքն ալ քննելով այս իտօլները կը հասնի այն եզրակացութեան թէ անոնք Ասիանիկ ժողովուրդին յատուկ են։

Ասոնց ամէնէն շատ նմանող օրինակները Կիպրոսի եփուած հողէ շինուած կարգ մը իտօլներն են, որոնց ժամանակամիջոցը պղինձի դարէն անագապղինձի դար կրնայ ըլլալ։

Դալով Կապադովկեան իտօլներուն, որոնք մէկ տիպարի մը վրայ են առհասարակ, կը կարծուի որ Քր.է առաջ մինչև 2000 տարիներու հնութիւն պէտք է ունենան (Հմմտ. Քէմալէտտին էջ 195-196)։

G. Contenau (La Civilisation des Hittites et des Mitaniens 1934



էջ 73) անոնց ժամանակամիջոցը կը նշանակէ մինչև վերջը Գ. և սկիզբը Բ. Հազարամեակին։

M. Contenau (Idoles de pierres provenant de l'Asie Mineure dans Syria էջ 193) կը կարծէ թէ անոնք աւելի հին են քան Կապադովկեան պնակիտները թէև մինչև նախապատմական ժամանակները չի տանիր։

René Dussand (Le Lydie et ses voisins aux hautes époques, Paris 1933 էջ 55) կը կարծէ թէ անոնք շինուած են Բ. Հազարամեակէն առաջ։ Olmstead այս քարէ իտօլներուն համար, թուական կը նշանակէ առաջին կէսը Ա. Հազարամեակին (Քր.է առաջ) ինչ որ բնաւ հաւանական չէ նկատի առնելով անոնց գաղափարին ու արուեստին նախնականութիւնը։

Քէմալէտտին (նոյն էջ 195-196) կը կարծէ գտնել անոնց վրայ ստեղծագործութեան և զարդի տեսակէտով Տրովադայի և Կիպրոսի ազդեցութիւնը, մասնաւորապէս գլխուն և աչքերուն տուած կարեւորութենէն հետեւցնելով, առանձնայատկութիւն՝ որ երկար տեւած է և գտնուած է նաև Միգէնեան դարու գործ՝ քանի մը պրոնզներու վրայ ալ։

G. Contenau (նոյն էջ 73) պէտք է բաղդատել կ'ըսէ անոնք աւելի Միջագետեան (բայց Սումերեան շրջանին) քան թէ Եգէականի արուեստին հետ։

Քէմալէտտին (էջ 196) հակառակ անոր որ աւելի Արեւմուտքի, Տրովադայի, Կիպրոսի և Եգէականի արուեստին կը կապէ զանոնք, կ'ընդունի նաև Սումեր-Ակկատներու գործերուն ներշնչումը անոնց վրայ, վասնզի կ'ըսէ թէ վերջերս գտնուած իտօլները կ'ապացուցանեն թէ Սումեր-Ակկատներէն ներշնչուած շինուածներու քով տեղական ոճով շինուածներ կան։

G. Contenauի տեսութեամբ շնորհիւ այս իտօլներուն, նախահայթեան կրօնքին վրայ ծանօթութիւններ ձեռք կը բերուին։

Պեղումներու շնորհիւ գտնուած են բազմաթիւ կաւէ առարկաներ, բդուկներ, պտուկներ, սափորներ, կուժեր, պնակներ, գաւաթներ, շիշի ձեւով կաւէ ամաններ, արձաններ և այլն, Հաթեան արուեստով։

Ասոնք կը հաստատեն թէ Հաթ կայսրութեան մէջ բրուտի արհեստը (Céramique) շատ յառաջացած էր Գ. Հազարամեակին և մեծ նմանութիւններ ունէր նախայունական կամ Միգէնեան արուեստին հետ։ (Edmond Pottier. L'Art Hittite fsc. 2 1931)։

Այս ժամանակամիջոցէն շատ աւելի կանուխ շրջանի Անատոլեան բրուտութեան վրայ ծանօթութիւններ ունինք, սակայն անոնք Արեւմտեան Փոքր Ասիոյ շրջանակին կը պատկանին։

Տրովադայի առաջին քաղաքի շրջանէն (3000-2400 Քր.է առաջ) գտնուած են սև կաւանօթներ ճերմակ զարդագիծերով դրուագեալ։

Քիչ մը աւելի ուշ, Միւսիոյ մէջ ի Yortan, այն ժամանակամիջոցին որ կը համապատասխանէ Տրովադայի Գ. և Դ. հիմնարկութիւններուն (առաջին կէս Բ. Հազարամեակին) կը գտնենք կարմիր բրուտեղէն մը կամ կաւանօթ մը։

Դալով Կապադովկեան գունաւոր կաւանօթներուն որոնք ժամանակակից ըլլալ կը թուին ասոնց, մեծ մասամբ շինուած են նուրբ հողէ և եփուած են ներկով կամ կարմրագոյն փայլուն ջնարակով մը։

Զարդի համար գործածուած են սեւ, գոյ դեղին, բաց կապոյտ, նարնջագոյն եւ կարմիր գոյները, եւ առհասարակ երկրաչափական գծազարդերով նկարուած են։ Նկատելի է որ ոչ ծաղիկի եւ ոչ ալ մարդու դէմք տեսնուած է անոնց վրայ, այլ միայն երբեմն պատկերները կենդանիներու եւ հազուադէպօրէն տերեւներու։ (Քէմալէտտին, էջ 178–179)։

Անոնց վրայ գծուած կենդանիներու նկարները բաւական յաջող են, ինչպէս Կեսարիոյ թանգարանը գտնուած օրինակներուն վրայ։ Անոնց մէջ կան Քր.Ե առաջ մինչեւ 3500 տարիներու հնութիւն ունեցողներ, թէեւ մեծամասնութեամբ 2500–2000 թուականներուն կը պատկանին։ (Քէմալէտտին, էջ 181)։

Edmond Pottier զանոնք կը բաժնէ չորս մեծ խումբերու։

1.— Շուրջ Քր.Ե առաջ 2000 թուականէն երկար բերանով, կոթով Քիւլթէփէի հողէ ամանները։

2.— ԺԹ.–ԺԶ. դարերու յատուկ բազմագոյն եւ կիտուածանկարեալ հող-ամաններ։

3.— Ժ.–ԺԲ. դարերէն Ը.–ԺԱ. դարերու յատուկ կանոնաւոր եւ հասարակ ձեւով անօթներ։

4.— Արշիպեղագոսի եւ Հելլէնական ազդեցութեան տակ պատրաստուած կաւանօթներ։

Ըստ Քէմալէտտինի (էջ 180) Անատոլեան բրուտի արուեստով շինուած հողէ ամաններուն ձեւերը չէ՛ սակայն զարդանկարները երկու աղբիւր ունին, Միջագետք եւ Ելամ, որոնցմէ փոխառութիւններ են։

Բրոֆ. Խաչատրեան, կը մատնանշէ բոլոր Նախասիոյ կաւանօթներու տեսակին եւ զարդանկարներուն համար դարձեալ երկու ծագում այն է՝ նախ Սուբարեան (Ելամ–Սումերեան) ապա Հաթ–Միտանեան, որոնց ծագումը կուգայ Սեւ Ծովու հիւսիս–արեւելեան շրջանէն, (Հայաստանի Սեպ. Տրջ, Պատմ. էջ 107) ըստ նոր հետազօտութեանց։

Այնպէս որ փոխանակ Հաթերը արեւմուտքէն ստացած ըլլալու իրենց ներշնչումները, բրուտեղէններու կերտման եւ զարդարման մէջ, հարկ կ'ըլլայ ընդունիլ թէ ընդհակառակը անոնք զայն իրենց նախնական օրրանէն բերած են Փոքր Ասիա եւ փոխանցած Եգէականի եզերքներու վրայ ապրող ժողովուրդներուն։

Հաւանական է ենթադրել թէ նոյնիսկ անոնք բնակարաններու շինութեան համար իրենց ուսուցիչ ունէին անյիշատակ ժամանակներու մէջ ապրող հնագոյն ժողովուրդներ։

Անոնք ունեցած են քաղաք, աւան, բերդ եւ գիւղ։ Անոնց քաղաքները հաւանօրէն պարսպապատ էին եւ այդ ժամանակի ուրիշ Մերձաւոր Ասիոյ քաղաքներէն մեծ տարբերութիւն չունէին բնականաբար։

Սակայն դժբախտաբար որոշապէս Նախահաթեանց շրջանին առանձնայատուկ քաղաքի մը շինուածները չեն գտնուած կամ ճշդըւած, վասնզի Հաթերը՝ որոնք նմանցուցած են Նախահաթերը, նախ գրեթէ բոլորովին կործանած են անոնց քաղաքները, ինչպէս Խատուշաը եւ ապա վերաշինած, այնպէս որ իրենց ճարտարապետական յիշատակարաններուն վրայ որոշ տեղեկութիւններ կը պակսին եւ իբր շինութիւն կամ շէնք այսօր գտնուածները կը պատկանին կարելի է աւելի Հաթերու շրջանին քան թէ Նախահաթեանց։



Սակայն ասիկա ըսել չէ թէ Նախահաթեանց շրջանէն ոչինչ հասած է մեզի։ Թերեւս մեծ չափով այն հնութիւնները որոնք Հաթեանց առանձնայատուկ արուեստով կ'որոշուին, կը պատկանին Նախահաթեանց շրջանին։

Իրենց մշակութային գլխաւոր կեդրոնին Խատտուշաշի մէջ գտնուած են 5000 տարիներու հնութեամբ արձաններ եւ քանդակներ, սակայն իրենց դիմանկարները ճկունութենէ, շարժումէ եւ կենդանի արտայայտութենէ զուրկ էին, հակառակ որ Հաթ արուեստագէտներ զանազան առարկաներ երեւակայական կերպարանքներով վարպետօրէն պատկերացնել գիտէին, նոյնիսկ Գ. Հազարամեակէն սկսեալ կատարելագործուած արուեստ մը յայտաբերելով։ (Տոք. Նշան Մարտիրոսեան, Արեւելք, թ. 509)։

Գ. Հազարամեակին Նախահաթերը ծանօթ էին նաեւ մետաղ ձուլելու փափուկ արուեստին։

Ըստ Տոքթ. Նշան Մարտիրոսեանի (Արեւելք թ. 509) «Շատ հաւանական է որ Հաթիդացիք երկաթ, պողպատ եւ ուրիշ մետաղներ հանելու եւ ձուլելու արհեստը Կովկասի եւ Հայաստանի ժողովուրդներէն սորվեցան եւ հետզհետէ այնպիսի կատարելագործութեան հասցուցին որ Խուրրուրիի իշխանութեան ժամանակ եգիպտացիներուն մեծաքանակ երկաթ, արծաթ կը հայթայթէին»:

Մտաւոր մշակոյթով ալ ետ չէր մնար Խաթի ժողովուրդը ժամանակին զարգացած ու քաղաքակիրթ համարուած ժողովուրդներէն։

Անոնք իւրացուցած էին սեպագիրերու գործածութիւնը եւ աքքատերէն լեզուն՝ իբր ժամանակին միջազգային լեզուն։

Շուրջ Գ. Հազարամեակի վերջը (Քր.Ե առաջ) ի Կապադովկիա գործածութեան մէջ էր սեպագիրը: (Հայ, Սեպ. Տրջ. Պատմ. էջ 109)։

Անոնք գործածած են նաեւ «Հաթեան» կոչուած պատկերագիրերը որոնք զուտ տեղական հանգամանք մը ունին քանի որ Եփրատէն անդին դէպի Արեւելք անոնցմէ երբեք չէ գտնուած (Նոյն)։

Անոնք կը խօսէին իրենց սեփական լեզու մը որ պայմանագրական բառով մը կրնանք կոչել Նախահաթերէն:

Այս լեզուն որ Հաթեան լեզուին հետ գոյութիւն ունէր ըստ Հրոզնիի՝ ոչ-հնդեւրոպական էր (ՀԱ. 1932 էջ 154) եւ նոյն էր Միտաններէնին՝ այսինքն այն լեզուին հետ որ էլ-Ամառնայի փարաւոնեան դիւանէն ծանօթացած էր։

Նախահաթերէնը որ բոլորովին տարբեր լեզու մըն է, Փօլազ քէօյի



Ագարակէ մը Կեսարիոյ Միւզէն բերուած քանդակէն զատ միւս կողմերը Հաթեան Մեհենագիրներով լի յիշատակարանը: Գիրերէն խոշոր քանդակուածները գլխագիրի դեր կը կատարեն եւ ինքզինքն ցոյց տալով «ԷՍ» ըսելով կ'սկսի գրութիւնը:

աւերակներուն մէջ գտնուած պնակիտներու բոլոր միւս լեզուներէն չափազանց կը տարբերէր (Էմիլ Ֆորրէր ՀԱ. 1932 էջ 165)։

Նախահայթեանք այսպէս կը հանդիսանային մարդկային քաղաքակրթութեան նախաձեռնողները կամ քաղաքակիրթ հնագոյն ժողովուրդներէն մին, որոնք իրենց համար բնակավայր ունէին մանաւանդ Արգէոսի շուրջ տարածուած այս հետաքրքրական երկիրը, Ալիսի հովիտը՝ —նուիրական վայրը իրենց— և կամ աւելի ընդարձակ սահմանով Սև ծովէն Միջերկրական տարածուող կեդրոնամասը Փոքր Ասիոյ։

Հոն է որ առաջին անգամ գոյութիւն կ'առնեն աշխարհի հնագոյն մեծ քաղաքները։

Հոն այդ շրջանակին մէջ էր որ Նախահայթերը կերտած էին իրենց մայրաքաղաքը՝ Խատտուշաշը (=Պօղազ-քէօյ) որ կործանելէ յետոյ վերակառուցին Հնդեւրոպական Հայթերը։

Պօղազ քէօյ բնակելի էր արդէն Նոր-Քարային շրջանին (Դ. Հազարամեակ Քր.է առաջ) և Բ. Հազարամեակին (Քր.է առաջ) եղած էր մայրաքաղաք Հայթեանց պետութեան:

Թէ՛ Կապադովկեան աղիւսագիրքերուն և թէ՛ Հայթեան շրջանի բնագիրներուն մէջ կը կոչուէր Hatti կամ Hattusas.



ԷՐՔԻԼԷՏԻ ՄԷՋ ԱՅԳԻԻ ՄԸ ՊԱՏԻՆ ՏԱԿ ԳՏՆՈՒԱԾ ՀԱԹԵԱՆ ՆՇԱՆԱԳԻՐԵՐՈՎ ՔԱՐԸ

Հայթեանց մեծ պետութեան կործանման ատեն (իբր 1200 Քր.է առաջ) կործանած է Խատտուշաշ, ինչպէս կործանած են Հայթեան ուրիշ քաղաքներ, Հիւսիսային այն նոր մեծ գաղթականութեան շրջանին, բայց համեստ չափով յետոյ վերաշինուած է, թէև անծանօթ կը մնան անոր տէրերը (ՀԱ. 1933 էջ 535)։

Նախահայթեան շրջանին նաեւ գոյութիւն առած էր Սեմական գաղութ և հնագոյն առեւտրական կեդրոն՝ Կանէշը, որուն մասին այնքան ընդարձակ ծանօթութիւններ տուի։

Կանէշ եւս կործանած պիտի ըլլայ շուրջ 1200 թուին (Քր.է առաջ) Հայթեան պետութեան կործանման ատեն։

Նոյն այդ չափազանց հետաքրքրական քաղաքակրթական որորանին մէջ, որ էր Նախահայթեանց պետութիւնը, կար նաև Արինա (հիմա Իւրիւք) քաղաքը որուն քանդակները աւելի հին ժամանակներու կը



պատկանին քան Պօղազքէօյ գտնուածները (տես Քեսարիք կամ մոռցուած կայսրութեան մը պատմութիւնը էջ 55)։

Շնորհիւ Կապադովկեան պնակիտներուն կարելի եղած է նաև կատարել քանի մը որոշ տեղագրական ճշդումներ։

Այսպէս Purushattu քաղաքը, որուն համար այդ պնակիտները կը հաստատեն թէ կը գտնուէր Կանէշի մօտը, անտարակոյս նոյն է «Պատերազմի թագաւոր»ին դիւցազներգութեան Pursahanda-ին հետ և



Ալիսի եզերքը Պօղնա կամ Պաղնէ գիւղի կողմերը եւ հիմա Կեսարիոյ թանգարանը զետեղուած նշանագրերով քարը, զոր Garstang սահմանագլուխի քար մը կը կարծէ, իսկ Sofp. Gelb իբր թէ անոր ընթերցումը կատարելով Kurpas թագաւորին վերաբերող արձանագրութիւն մը ըլլալը հաստատած է, ուր նշանակուած են իր պատերազմով տիրապետած երկիրներուն անունները:

շատ հաւանօրէն կը գտնուէր արդի Կեսարիոյ տեղը, ինչպէս Saladuwara-ն անտարակոյս է Յոյն-Հռովմէական Savatra-ն՝ տեղը Yagli-Bayat-ի աւերակներուն, 58 քիլոմէթր Գոնիայի արեւելեան կողմը (G. Contenau նոյն էջ 60)։

Ասոնք ամէնը ցոյց կուտան թէ հոն ծաղկած էր պատկառելի մշակոյթ մը, և Նախահայթերու երկիրը կամ Խաթիան կը ներկայացնէր մեծ ամբարտակ մը վաղեմի քաղաքակրթութեան, որ այնքան զօրաւոր եղած է որ ոչ միայն տարիներու երկար շարք մը այլ նաև բազմաթիւ այլացեղ ժողովուրդներու յաջորդական ներարշաւները՝ դէպի Փոքր Ասիա, չեն կրցած դեռ ջնջել անոր նիւթական մշակոյթին մնացորդները։

Լեհ հայթաբան S. Przeworcki, որ 1927ին եղած է Փոքր Ասիա, և անձամբ ուսումնասիրած տեղական կեանքը, գտած է որ շատ բան Նախահայթեան նիւթական մշակոյթի մնացորդներ են, որոնք կը շարունակեն վերապրիլ տեղական ժողովուրդներու մէջ։

Ան կը գրէ. «Կեդրոնական Անատոլիան իւրացնող Հաթերը պէտք է մտածել նմանազօրծէին այն բնիկներուն, որոնք անոնք գտան բարձրաւանդակին յատուկ կեանքով: Այս է պատճառը, որ մշակոյթի ինչ ինչ բաներ չենթարկուեցան այքի զարնող փոփոխութեան Հաթերու ժամանակէն մինչեւ այժմ: Մենք այստեղ կը մատնանշենք զուտ Անատոլիան ու կը հաստատենք թէ կարելի է այս նոյն բաները զննել Անատոլիոյ մէջ պատմական իւրաքանչիւր ժամանակամիջոցի քաղաքակրթութեան մէջ: Մասնաւորապէս պէտք է յիշել այն «վերապրողներու» շարքին՝ ներկայ մշակոյթի մէջ կօշիկներ՝ վեր դարձած քիթերով, նման ադիւսով շինութիւնը եւ կենդանիներու աղբն իբր վառելիք գործածելը՝ փայտի փոխան, թէեւ այժմ աւելի սակաւ քան նոյնմն: Ներկայ սայլանիւներու 2 տեսակը (ամբողջական փայտէն) Ալաճէրտի մէջ կ՚անուանեն «մառան»՝ շինուած բլլայր՝ Գ. Հազարեակէն մինչեւ այժմ պահպանուիլը, կը վկայեն արհեստական յեսամնացութիւնը Անատոլեան ժողովուրդներու մէջ»: (Հայ.ի Սեպ. Տրջ. Պատմ. էջ 109):

Նախահայթեան կամ Խաթիական քաղաքակրթութեան շրջանը որ կը յատկանշուի Կապադովկեան պնակիտներով, յեղակարծ ընդհատումի կը մատնուի: Կը կարծուի, կարգ մը գիտուններու կողմէ, թէ այս մշակոյթը որուն ռահվիրան հանդիսացած էր Կանէշի սեմական գաղութը Սումեր-Աքքատեան քաղաքակրթութիւնը Կապադովկիա ներմուծելով, անոր դրօշը բարձր բռնելով միշտ, անշքացած է վասնզի Կապադովկեան սեմական գաղութը բնաջնջուած է Անիտաշ Կուշարացիի և իր յաջորդներուն կողմէ, երբ Բաբելոնեան Ա. Հարստութեան հարտ Ասորեստան տկարացած է և դարձած՝ անզօր պաշտպանելու իր գաղութները:

Երկրորդ շրջանի մը, Հաթերը, զօրացած Հնդիկ-Եւրոպական հատուածով մը, որ դէպի 2000-1900 Քր.Է առաջ եկած էր, կ՚անցնին Տաւրոսը, կը կողոպտեն Բաբելոնը և կը գրաւեն Հալէպը դէպի 1800:

Բայց Նախահայթեան շրջանը, որ կը դրաւէ Գ. Հազարամեակին տեւողութիւնը՝ այսինքն Կապադովկեան պնակիտներու ժամանակամիջոցը, ունի ոչ նուազ խորունկ առանձնայատկութիւն մը հակառակ այն կարեւորութեան որ Սեմական համայնքը հոն կ՚ստանայ:

Rubaumներու գոյութիւնը կը հաստատէ ամրօրէն կազմակերպուած տեղական քաղաքական իշխանութիւն մը: Կապադովկեան կնիքներու քանդակարուեստը, բրուտութիւնը, խոյները կը բնորոշեն Անատոլեան քաղաքակրթութիւն մը որ կը կապուի թէ՛ Եգէականի և թէ՛ Պալքանեան շրջանակներու հետ:

Գլանիկներու քանդակարուեստը, ընդհակառակը, ցոյց կուտայ արեւելեան տարրերու ազդեցութիւնները, — բայց հին գերազանցապէս Սումերական— որոնք տարածուած չէին բնաւ Արեւելքի մէջ այս դարուն:

G. Contenau կը մտածէ թէ ժողովուրդ մը չի կրնար ուրիշի մը վրայ խոր ազդեցութիւն ի գործ դնել, գեղարուեստական տեսակէտով, երբ ցեղային միութիւն չունի անոր հետ: Երբ ընդհանուր արուեստ մը, խորքին մէջ միօրինակ, ծաղկած է դարերէ ի վեր Եւրոպայի մեծագոյն մասին մէջ, անոր համար է որ ցեղային միութիւնը հոն գոյութիւն ունի:

Բոլոր Մերձաւոր Ասիոյ Ասիական հասարակաց հիմն է որ թոյլ տուած է փթթումը ընդհանուր արուեստի մը որ կոչուած է Միջագետային կամ



Հին Արեւմտեան Ասիական արուեստ, որուն հիմը կը կազմէ Սումերական արուեստը:

Փոքր Ասիոյ մէջ յարատեւող կենսունակութիւնը Սումերական տարրերու, որոնք նոյն դարուն Սեմականաց ազդեցութեան տակ Միջագետքի մէջ ալ նորաձեւութեան ենթակայ էին, անոր մէկ նոր ապացոյցն է (G. Contenau, նոյն էջ 76):

Փոքր Ասիոյ բնակչութեան առաջին խաւը կազմող այս ցեղին յետոյ Կապադովկիա կոչուած աշխարհին մէջ որքան ատեն տիրապետող ըլլալու մասին որոշ տուեալներ չունինք դժբախտաբար:

Հաւանաբար Դ. Հազարամեակի ընթացքին այս նախախաւին եկած խառնուած են Լուվիները որոնց վրայ այնքան քիչ բան գիտենք. (G. Contenau, նոյն, էջ 72):

Լուվիացիք Հնդեւրոպական ծագումով ժողովուրդ մըն էին որ ԻԵ. դարուն (Քր.Է առաջ) Փոքր Ասիա արշաւած և նախապէս Կիլիկիոյ մէջ հաստատուած են, հոն հիմնելով Լուվա կամ Արզաւա պետութիւնը, որուն թագաւորները դիւանագիտական յարաբերութեան մէջ եղած են Եգիպտոսի Փարաւոններու հետ, ինչպէս կը հաստատեն Ամառնայի մէջ գտնուած բեւեռագիր պնակիտները: (տես Արեւելք. թ. 510, 20 մարտ 1933):

Ասոնց տեղաւորումը Փոքր Ասիոյ այս մասին մէջ եղաւ անտարակոյս ի վնաս Նախահայթեանց, որոնք կը մնային մաս մաս եղած Ալիսի գծած շրջանակին մէջ դէպի Արեւելք և դէպի Հարաւ-Արեւելք ելքերով:

Լուվիներու գալուստէն յետոյ կը տեսնուի Կապադովկիոյ Ասորեստանեան համայնքին ծաղկումը յանկարծ ընդհատուած արշաւովը՝ Նէսերու, որոնց հետզհետէ առաջացումը դէպի Կեսարիա, դէպի Տաւրոս, դէպի Վերին-Սուրիա և դէպի Բաբելոն, տեւեց մինչև 1800: Այս զանազան ընդհատումները զգալի կ՚ընեն Դ. Հազարամեակի կէսէն ասդին, գոյութիւնը Հնդեւրոպական տարրի մը կամ գործօնի մը, Արեւմտեան Ասիոյ մէջ, որու քաղաքակրթութեան պատմութեան մէջ նոր տարր մը երեւան կուգայ: (G. Contenau, նոյն, էջ 77):

Իսկ Դ. Հազարամեակին վերջերը կամ Ի. դարուն (Քր.Է առաջ) Փոքր Ասիա խուժեց երկրորդ հօսանք մը: Այս երկրորդ հօսանքը Հնդեւրոպական տարր մըն էր, որ եկաւ հասաւ մինչև Ալիսի հովիտը և Արգէոսի ստորոտը, իրեն որոշ հետքերը թողլով Կասուներուն, Մետանիներուն, Քետացիներուն և նոյնիսկ Հայոց մէջ:

## Բ.

## ՀԱԹՍԱՆՑ ՇՐՋԱՆ
## (2000 – 1200 Քրիստոսէ առաջ)

Այս նոր զանգուածը ժողովուրդին, կուգար Սև Ծովու հիւսիսային և հիւսիս-արեւելեան եզերքներէն մինչև հեռու Վոլկայի ստորին հօսանքը տարածուող այն տափաստանէն, որ մինչև հիմա կատարուած լեզուաբանական, մարդաբանական և քաղաքակրթական հետազօտութիւններու և խուզարկութիւններու համաձայն, բնավայրն կամ նախնական օրօրանն եղած է Հնդեւրոպական մարդկային մեծ ընտանիքին:

Նախապատմական ժամանակներէն սկսած մինչև պատմական շըրջան, բազմաթիւ անգամներ, մարդկային հոսանքներ այս տափաստաններէն, ողողած են դէպի հարաւ աւելի բարձր մշակոյթ ունեցող երկիրներ և Վոսփորի ու Հելեսպոնտոսի նեղուցներէն ու Կովկասի կիրճերէն թափած են Նախասիա՝ առաջ խաղալով զանազան ուղղութեամբ և բնակութիւն հաստատելով տարբեր երկիրներու մէջ։

Այս խուժումներէն մէկը և առաջինը որ ցարդ յայտնուած յիշատակարաններով կը հաստատուի — կը կատարէր այն խումբը որ Փոքր Ասիոյ կեդրոնը Ալիս գետին հարաւին կողմը կը հաստատուէր Կուշշարա(1) կոչուած քաղաքին մէջ, (տես Հայ. Սեպ. Տրչ. Պատմ. էջ 149)։

Դեռ չէ ճշդուած անոնց արշաւուղին, սակայն ինչ ինչ նշաններ կը մատնանշեն Կովկասէն Նէսաս ուղեգիծը։ (Նոյն, էջ 149)։ Հռոզնի նաև համաձայն է որ այս երկրորդ հոսանքը եկած է Կապադովկիա՝ Արեւելքէն՝ հաւանօրէն Կովկասէն։

Այս երկրորդ հոսանքը ըստ B. Hrozny-ի կը բաղկանար Նէսիացիներէ (2), որոնք նախապէս Հնդեւրոպական ծագում ունէին, բայց ժամանակի ընթացքին բնիկ ժողովուրդին կողմէ ֆիզիքապէս ձուլուեցան և իրենց Հնդեւրոպական տիպը բոլորովին կորսնցուցին։ (Հմմտ. Տոքթ. Նշան Մարտիրոսեան Արեւելք թ. 501 14 Մարտ 1933)։

Չեխ հայթագէտին կարծիքով «Նաշիլի» Հնդեւրոպական ծագում ունեցող Հայթեան բուն անունն է։

Ինչպէս Խալթիացիք կամ Նախահայթերը ինքզինքնին իրենց «Խալթի» երկրին անունով յորջորջած են, նմանապէս Նէսերը իրենց Նէսաս կամ Նէշաշ մայրաքաղաքին անունով կոչուած են։

Գերման արեւելագէտ մը՝ Էմիլ Ֆորրէր (Emil Forrer) Հայթեան ժողովուրդին հնդեւրոպական խաւը «կանեսացի» և անոնց լեզուն «կանեսերէն» կամ «կանեէրէն» կ'անուանէ(1)։

Հ. Տաշեան համաձայն չէ այս անուանակոչումներուն (տես ՀԱ. 1932, էջ 166) և զանոնք կը կոչէ պարզապէս Հայթեր, որոնք ինչպէս Կապադովկեան պնակիտներ ցոյց կուտան, արդէն կանուխէն և ամէն պարագայի մէջ գոնէ Ի. դարուն (Քր.է առաջ), իբր հնդեւրոպական տարրեր կը նստէին այս շրջանակին մէջ, և նոյն դարուն էր որ կը տիրէին Խատտի կամ Խատտուշաշ (Հատտի կամ Հատտուսաս) քաղաքին, որ իրենց մայրաքաղաքը կը դարձնէին։ (ՀԱ. 1931, էջ 52)։

Հայթեան յիշատակարանաց մէկ մասին մէջ փոխանակ կարճ ու անմիջապէս դէպի գագաթ յետս նահանջող ճակատի, կը տեսնուի բարձր ու մեծ ճակատ, ուստի երկարագլուխ կամ գոնէ կէս-երկարագլուխ տիպար մըն ալ։

---

(1) Կուշշարա ըստ Ֆորրերի (Reall I. 245) Կապադովկեան սեպագիր արձանագրութիւններու համաձայն մօտաւորապէս կը համապատասխանէ արդի Տիվրիկին։ (տես Հայ. Սեպ. Տրչ. Պատմ. էջ 149)։

(2) Հրոզնի այսպէս կը կոչէ այս Հնդեւրոպացի ժողովուրդը առնելով այս անունը իրենց մայրաքաղաքին Nêsas անունէն։ Նէսաս կամ Նիսա հաւանօրէն դասական Նիւսան է։

Այս անուան ծագման մասին Հրոզնի ունի հետեւեալ հետաքրքրական նկատողութիւնները որոնք նոյնութեամբ մէջ կը բերեմ

«Նիշաշ քաղաքը մեզ ծանօթ չէ Փոքր Ասիոյ Նախահայթեան շրջանին մէջ Աքքատի Սարգոնի և Նարամ-Սինի արձանագրութիւններէն կամ Քիւլթէփէի տախտակներէն։ Ան յանկարծ երեւան կուգայ նախ քան Քր. Ի. դարուն Հնդեւրոպացի Հայթերու՝ Փոքր Ասիա արշաւած ժամանակ՝ անմիջապէս դառնալու համար անոնց քաղաքական կեդրոնը և շուտով — մի քանի դար վերջը — մոռացութեան կը մատնուի, երբ անոր կը փոխարինէ Հայթ նոր մայրաքաղաքը։ Կը թուի թէ Նիշաշը հիմնած են նոյնիսկ Հնդեւրոպացի Հայթերը։ Իր անունը, կ'երեւայ թէ, Հնդեւրոպական ծագում ունի. տեսնել ձայնաւորներու փոփոխութիւնը Nêsas բայց nâsili։ Հնդեւրոպացի Հայթեր հաւանաբար իրենց հետը բերին այս անունը։ (Nêsa-s անունը կարելի է պատկանիլ Հնդ. nes արմատին Հնդ. neomai «գնալ, վերադառնալ», nostos «վերադարձ», Սկտ. nasatê «միանալ դաշնակցիլ», asta-ավստ. asta «բնակավայր, ծննդավայր»։ Այս պարագային ան պիտի նշանակէր «բնակավայր, ծննդավայր»)։

Նէսաս անունը փոքր ինչ կը յիշեցնէ Ni (s) saja. Nêsaion, կամ Nisaion pedion (Նիսաեան դաշտեր) երկիրը Մարաստանի մէջ, ուր կը բուծանուէին Պարսից արքային Նեսեան նշանաւոր ձիերը oi Nêsaion, Nisaioi, Nusaio hippoi (Նիսեան ձիերը)։ Տեսնել Դարեհի Պիսիտունի մեծ արձանագրութիւնը հատուած 13. Սորարոն 525–530 Հմտ. 509 եւայլն։— Nisa Հպս. Nasàya, to Nisaion pidion «Nicaya Niederlassung» «գաղթականութեան մը տեղ հաստատուիլը» կը հասկնային պարսիկները, որոնք նախապէս հովոյ գնացող վաչկատուններ էին, բայց գլխաւորաբար բարձրադիր ճարակավայրեր, որոնք հնարաւոր կը դարձնէին լաւ ձիաբուծութիւն։ (Tomaschek bei Sven Hedin, Ostpersien II. 331)։

Միւս կողմէն այստեղ կարելի է մտաբերել Nesiotis՝ ըստ Պտղոմէոսի աշխարհագր. V. 8. 12. կը գտնուէր Rha-Volga գետին արեւելեան կողմը, թէպէտև այս անունը երբեմն կը բացատրեն Վոլկայի բերանը գտնուող բազմաթիւ կղզիներով։ Համեմատել նաև Nêsis (Nêsis այժմ Սոչի) քաղաքին և գետին անունը, Pityus-ի հիւսիս-արեւմտեան կողմը Սև Ծովու վրայ։

Գուցէ փոքր ինչ յանդուգն ըլլայ կամենալ բացատրել մեր Nêsas ու Nis(s)ja— Nesaya անունը այն վարկածով, թէ մեր Նեսեանները (Nêsite) նոյնպէս և Մարական (Միտական) Նեսեան ձիեր բուծողները իրենց վերջին հայրենիքն եկած են երկիրէ մը՝ նոյնպէս Nesas կոչուած, որ կը գտնուէր Սարմատիոյ մէջ։ Ամէն պարագայի, մեր Nêsas ու մետական Nêsaja մեզ կ'ուսուցանեն թէ պէտք չէ nas-ով սկսող ամէն աշխարհագրական անուն բացատրել՝ մատնանշելով յունարէն nesos «կղզին»։ Այս պարագային խնդիր է գիտնալ թէ արդեօք Նեսեանները, ինչպէս աւելի վերջը Փռիւգները, Թրակացիները, Արմէնները և Կելտերը (Գաղատիոյ) Փոքր Ասիա չեն եկած Վոսփորի ճամբով։ ( տեսնել Բրոֆ. Խաչատրեան, Հայաստանի Սեպ. Տրչ. Պատմութիւն, էջ 150–151)։

(1) Այս բառը կազմուած է Կապադովկիոյ մէջ գտնուող Կանէշ քաղաքին անունէն։

Անշուշտ հնդեւրոպական Հաթերը իրենց հետ չբերին այս կարճագլուխ տիպարը, երբ այն կողմերը երեւցան գոնէ Ի. դարուն (Քր.Է առաջ), մաս մը՝ նաև քանի մը դար աւելի առաջ։

Բայց խառնուելով Խաթթիացիներու (=Նախահայերու) հետ՝ աւելի կամ նուազ չափով ընդունեցին նոյն տիպարը, այնպէս ինչպէս ընդունած են նոյնն այլ և այլ չափով՝ արիական և այլ ազգեր (ինչպէս հայեր. պարսիկներ և այլ) և նաև սեմացիք՝ ինչ անուն որ կրեն այսօր կամ կրած ըլլան պատմութեան ընթացքին։

Արեւելքէն Փոքր Ասիա ներխուժող այս Հնդեւրոպական ժողովուրդին յարուցած տակնուվրայութիւնը, Բ. Հազարամեակին վերջ կուտայ Միջագետքի պետութեանց գերիշխանութեան Փոքր Ասիոյ մէջ, և զինուորական պետութիւններ կ'ըլլան Խարրիներու աշխարհին մէջ՝ Միտանի և Նախահայերու երկրին մէջ՝ Հաթերը կամ ըստ Հռոզնիի Նէսերը։

Այս յեղաշրջութիւններէն և ազգերու բախումէն ազդուած չէ Փոքր Ասիոյ Արեւմուտքը, մինչև արեւմտեան գաղթականաց երեւալը, որ կը յապաղի մինչև ԺԳ. և ԺԲ. դար Քր.Է առաջ։

Բ. Հազարամեակին նկատելի է Հաթեան պետութեան աղերսը՝ Արեւմտեան Անատոլիայի հետ, ինչպէս նաև առհասարակ Փոքր Ասիոյ տեղական արուեստներու աղերսը՝ Սումերական-Ակկատեան արուեստին հետ, թէև բարձրաշխարհի արուեստը տարբեր ըլլայ ծովեզերեայ արուեստէն։ (ՀԱ. 1931, էջ 57)։

Հռոզնիէն՝ Նեսեր, Ֆորրէրէն՝ Կանէշացի և Տաշեանէն՝ պարզապէս Հաթեր կոչուած ժողովուրդը, մօտաւորապէս Ի. դարուն (Քր.Է առաջ) կը տեղաւորուի իր նոր հայրենիքին մէջ։

Այս արիական ներոյժ ժողովուրդը չէր կրնար սահմանափակուիլ Կուշշարա քաղաքին համեմատաբար նեղ շրջանակին մէջ, ուստի ժամանակի ընթացքին Խաթթիացիներուն կամ Նախահայերուն դէմ կռիւ մղելով կը գրաւէ անոնց երկիրը՝ Խաթթին, ու անոնց կը պարտադրէ իր լեզուն ու մշակոյթը, բայց ինքն ալ իր կողմէն Փոքր Ասիոյ բնիկներու լեզուներէն շատ մը բառեր ու քերականական ձեւեր, յատուկ անուններ և այլ կ'իւրացնէ։

Կուշշարա քաղաքի թագաւոր Պետխանաշի որդին Անիտաշ (1950-



Նիյտէի կուսակալութեան պատկանող եւ Նիյտէէն 8 ժամ եւ Նեվշեհիրէն 12 ժամ հեռու Քիօմիւրճի գիւղին մօտ Կէօլլի տաղ կոչուած լերան վրայ գտնուած բազմաթիւ առիւծի Հաթեան արձաններէն մին, որ Կեսարիոյ թանգարանը կը պահուի:



1920) առաջին հիմնադիրը կը դառնայ Հաթեան հին պետութեան, և շուտով Անիտաշ կ'սկսի ընդարձակել իր սահմանները Ալիսի ու Լիւկոսի (= Իրիս) ընթացքով իջնալով դէպի հարաւ-արեւմուտք և առաջանալով մինչև Խաթթի – քաղաքներ գտնուող թագաւորութիւնները, որոնք կը նուաճէ։ Այս կարգին կը գրաւէ Նէշաշ կամ Նեսաս քաղաքը, ուր կը հաստատէ նաև իր իշխանութեան կեդրոնը։

Անիտաշի իշխանութեան շրջանին Նէշաշ կամ Նեսաս Փոքր Ասիոյ շէն քաղաքներէն մէկը եղած է։

Այս գրաւումը, ալ աւելի գրգռեց անոր երկրակալական ախորժակը և ան իր ուշադրութիւնը դարձուց Ալիսի աղեղին մէջ հաստատուած Խաթթի բարգաւաճ պետութեան կողմն ու գրոհ տուաւ Խատտուշաշ մայրաքաղաքին վրայ և բուռն պայքարէ յետոյ գրաւեց ու հիմնայատակ կործանեց։

Յաղթողի զայրոյթն այնքան մեծ էր որ Աստուածներու անունով անիծեց այն անձը, որ պիտի վերաշինէր կործանած մայրաքաղաքը, բայց սակայն արգելք չեղաւ, որ իր ժառանգորդները(1) ոչ միայն վերաշինեն աւերուած քաղաքը, այլ և իրենց մայրաքաղաք դարձնեն, իւրացնելով պետութեան անունը և կենդանացնելով նաև քաղաքին Խատտուշաշ անունը։



ՏԷՎԷԼՈՒ (ԷՎԷՐԷԿ) ԳՏՆՈՒԱԾ ՀԱԹԵԱՆ ԱՄԵՆԱԿԱՐԵՒՈՐ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԷՆ ՖՐԱՔՏԻՆԻ ՔԱՆԴԱԿԸ

Այս քանդակը Գարասուի մէջ թափող Ֆրանք-թինի հովիտին արեւելեան կողմը կանգնած քարաժայռի մը վրայ քանդակուած է:

Քարաժայռին երկարութիւնն է երեք մէթր եւ բարձրութիւնը մէկ մէթր:

Ինչպէս նկարէն կ'երեւայ կրօնական ծիսակատարութեան մը պատկերացումն է:

---

(1) Անիտաշ Կուշարայիի յաջորդած են ըստ Alb. Götze-ի (das Hittiter Reich) Տուտխալեաշ Ա., Պուշարմա, և Լաբառնաշ՝ որ կը համարուի Հաթ պետութեան իսկական հիմնադիրը, (տես Բրոֆ. Ա. Խաչատրեան, Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 438)։

Անիտաշ Կուշարայիին Դ. յաջորդն էր Պաւախտայլմախ, որ շուրջ 1860–1850 (Քր.Է առաջ) կը կառավարէր երկիրը՝ հետագայ Խաթի պետութեան հիմնադիր վերոյիշեալ Լաբառնասի համար որ անչափահաս էր և ժամանակակիցն է Շամշի-Ադադ Ա.ի թագաւորութեան միջին ժամանակին (1879–1847) ըստ Ֆորրէրի (Reall I. 245) (տես Բրոֆ. Ա. Խաչատրեան, Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 149)։

Նորեկ այս հնդեւրոպացիները, (ըստ ոմանց Նէսեր և ըստ այլոց Հաթեր), շուրջ 2000ին Փոքր Ասիոյ կեդրոնը հիմնեցին Խաթ կամ Հաթ հզօր պետութիւնը, որ մինչև շուրջ 1200 (Քր.է առաջ) իր ձեռքը պահեց Փոքր Ասիոյ ճակատագիրը և կեդրոն դարձաւ Նախասիոյ քաղաքակրթութեան։

Եկւոր նոր ժողովուրդը որ Ասորեստանի արձանագրութիւնները կը կոչեն Խաթթա կամ Խաթ, իսկ Եգիպտոսի արձանագրութիւնները՝





ԿԵՍԱՐԻՈՅ ՄԻՒԶԷԻ ՄԷՋ ՊԱՀՈՒԱԾ ՀԱԹԵԱՆ ԱՐՁԱՆ

Հիւմէքսէ գիւղախումբին Եամուլա կամ Եէմլիհա գիւղին մէջ Գրզըլ Ըրմաքի վրայ նայող բլուրին վրայ գտնուած է 1908ին Robinsonի կողմէ:

Բարձրութիւնն է 2 մէտր 20 սանթիմ, եւ 3.5 թոնօ ծանրութիւն ունի, եւ շինուած է միակտուր կրանիթէ: Գլուխը չէ գտնուած: Պատուանդանին երեք կողմերը, երեք շրջանակներու մէջ երեք առիւծներ գծուած են:

Ըստ Բրոֆ. Dulaportի եւ Բրոֆ. Fon der Ostenի Քր.է առաջ ԺԴ. դարուն գործ է այս արձանը: Ըստ Բրոֆ. Brzyluskiի կապակցութիւն մը կը նշուի այս արձանով Հնդիկ եւ Հայ կրօններուն միջեւ:

Խեթա կամ Խաթա (Բրոֆ. Սէյսի «Քետացիք կամ մոռցուած կայսրութեան մը պատմութիւնը», թարգ. Հ. Վ. Յակոբեան, տպ. Բարիզ, 1900 էջ 123) և Ս. Գիրքը (Ծննդոց Ժ. Գլ.) Հեթ, Խեթ, Հիթիմ (հայերէն թարգմանութեան մէջ Յեթ, Հեթ կամ Քետացի), իրեն միջնաբերդ ունէր Կապադովկիան։

Այս Նէսերէն կամ Հաթերէն հաւանաբար շատ քիչ վերջը Նոր ալիք մը յորձանք տուաւ նոյն շտեմարանէն, այսինքն Սև Ծովու հիւսիսային տափաստաններէն և ինչպէս ընդունուած է, Կովկասեան ուղեգիծով ծաւալեցաւ Հայկական բարձրաւանդակի խորաձորերը։

Այս տեղէն անոնց մէկ թեւը իջաւ հարաւ ու հարաւ-արեւմուտք՝ Սուբարտու=Շուբրիա՝ գրաւելով Հիւսիսային Միջագետքն ու բնակու-



թիւն հաստատեց այս պետութեան մէջ՝ նուաճելով տեղական Սուբարու ժողովուրդը։ ((Բրոֆ. Խաչատրեան, նոյն, էջ 151)։

Ինչպէս որ Նէսերու ցեղը երկար պրպտումներէն յետոյ այժմ վերջապէս ընդունուած և հաստատուած է թէ Հնդեւրոպական է, նոյնպէս այս նոր խումբն իր լեզուային առանձնայատկութիւններով յայտաբարուած է Հնդեւրոպացի կամ աւելի ճիշդը՝ Արի: (Նոյն, էջ 151)։

Առաջինները երկար փնտռտուքէ յետոյ, կը թուի թէ, այժմ գտան իրենց բուն անունը՝ Նէսեր կամ Նեսեան, երկրորդ խումբը շնորհիւ իրենց թողած արձանագրութիւններուն՝ վաղուց արդէն ծանօթ էր Խարրի-Միտանի անունով։ (Նոյն էջ 152) և իրեն բնակավայր ունէր Արմենիան և Հիւսիսային Միջագետքը։

Եգիպտացիները այս ժողովուրդը կ'անուանէին Մտի=Մատի, Ասորեստանցիները՝ Մանտա, Մատա, Մաննա, և այլն։ Յոյն և Հռովմայեցին պատմիչներուն այս նոյն ժողովուրդը ծանօթ էր Մատիեն, Մեդ-Մադաեն ու Մարդ անուններով։ Հայերը, կ'անուանէին Մար, Մեդ և Մարդ (Մարդ-աստան)։ Ասորեստանցիներու համար այս ժողովուրդն արիական էր, ինչ որ կը հաստատուի նորագոյն քննութիւններով։ (Բրոֆ. Խաչատրեան, նոյն էջ 230)։

Անոնց մէկ թեւը առաջացաւ դէպի Փոքր Ասիա և յայտնի դարձաւ Հաթերու մէջ իբր «Մանտա-Մարտիկներ», (նոյն էջ 175)։ Ինչ որ կը հաստատէ թէ գէթ արիական անոր խաւ մը տարածուած էր դէպի Փոքր Ասիա՝ Հաթերու երկրին մէջ։

Հաթ պետութեան մէջ անոնք ունէին մասնաւոր դիրք մը, ինչպէս կը հաստատէ Հաթեան օրինագիրքը։ Անոնք ապահարկ էին և չունէին ոսէ կալուած։ Անոնք հարկադրուած էին նուիրուիլ իրենց մարտական կոչումին և նման էին նոյնպէս արիական Մարիանի կոչուածներուն, որոնք իբր արտօնեալ մարտական դաս՝ կարելի է ցոյց տալ Խարրիներու շրջանին՝ Հիւսիսային Սուրիոյ և Փոքր Ասիոյ մէջ։ (տես Բիլաբիլ, կամ Բրոֆ. Խաչատրեանի Հայաստանի Սեպ. Շրջ. Պատմութիւն, էջ 157)։

Ուշադրութեան արժանի պատմական երեւոյթ մըն է որ շուրջ 2000 Քր.է առաջ, երբ Հնդեւրոպական ժողովուրդներ Եւրոպական ցամաքամասէն Կովկասի ճամբով Կուրի և Արաքսի հովիտներէն կը հեղեղեն ամբողջ Նախասիան, հիմնական փոփոխութեան կ'ենթարկեն բնիկ տեղական ժողովուրդներու բոլոր քաղաքական կազմակերպութիւնները և կ'ստեղծեն այս աշխարհամասին տարբեր կէտերուն մէջ՝ նոր պետութիւններ։

Այսպէս գրեթէ միաժամանակ կը կազմուին Փոքր Ասիոյ կեդրոնին մէջ Հաթեան կայսրութիւնը, Հայաստանի և Հիւսիսային Միջագետքի մէջ՝ Խարրիի—Միտանի(1) մեծ պետութիւնը, Բաբելոնի մէջ կասեան

(1) Տաշեան կը նախընտրէ հակառակ Բրոֆ. Խաչատրեանի (տես Հայ. Սեպ. Շրձ. Պատմ. էջ 163-169) կարդալ Խուրրի (Hurri), և զայն կը նկատէ քաղաքական միաւոր մը և կազմակերպութիւն մը որ երբեմն դաշնակից և երբեմն թշնամի եղած է Հաթեան մեծ պետութեան։ (ՀԱ. 1932, էջ 170)։

Խուրրի կամ Խարրի բառը առաջին անգամ երեւան եկաւ Եգիպտոսի

(Կասիդ) Հարստութիւնը և Եգիպտոսի մէջ Հիւքսոսներու տիրապետութիւնը։ (Բրոֆ. Խաչատրեան, նոյն, էջ 233, Նաև էջ 177)։

Պատմագիրները յաճախ անդրադարձած են այս երեւոյթին վրայ և աշխատած են կապ մը գտնել այս ընդհանուր շարժումին մէջ (Հայ. Սեպ. Ծրչ. Պատմ. էջ 175) և գտնոնք ամէնքն ալ համարել Հնդեւրոպացիներ, թէև Հիւքսոսներու և Կասեաններու համար զօրաւոր փաստեր գոյութիւն չունենան (նոյն էջ 176)։

Հաթեան (Նէսեան) կայսրութիւնը որ կը կազմուէր Կապադովկեան երկրին մէջ, տիրող տարր ունենալով եկուոր Հնդեւրոպացիները, դարձեալ իր բնակչութեան խառնուրդով կը նմանէր Հայկական Բարձրաւանդակին վրայ կազմուած Խարրի-Միտանի մեծ պետութեան որուն վերնախաւն ալ Հնդեւրոպական դարձած էր գրեթէ միաժամանակ։

Այս երկու պետութիւնները գրեթէ նոյնանման պայմաններու մէջ կազմակերպուած և զարգացած, ունեցած են պատմական կեանք մը, որ չէ կարելի անտեսել։

---

Տէլ-էլ-Ամառնա գիւղին մօտ 1887ին գտնուած բեւեռագիրներու մէջ։ Այդ բառը տեսնուած է Պօղազքէօյի Հաթեան արձանագրութիւններուն մէջ ևս։ Ըստ Արշակ Սաֆրաստեանի զանազան գիտուններու կողմէ կատարուած բաղդատութիւնները գրեթէ քիչ կասկած կը թողուն Խուրրի բառին աշխարհագրական ու քաղաքական բովանդակութեան մասին։ (տես ԲՀՄՊ. 1931, էջ 256)։

Տաշեան կ'ըսէ թէ Խուրրի բացատրութիւնը որ այս հնագոյն ժամանամիջոցին մէջ ապրող «հայատիպ» ժողովուրդին (ըստ Խաչատրեանի Սուբարի) համար կը գործածենք, համազօր է Նախամիտանիի, վասնզի հաւանական է թէ Միտանի անունը Հնդեւրոպական տիրող տարրը տուած է Խուրրի աշխարհին և այս անունը թերեւս իրեն հետ բերած է հեռաւոր Նախահայրենիքէ մը։ (ՀԱ. 1932 էջ 167)։

Տաշեան չ'ընդունիր— ինչպէս ոմանք կը կարծեն— թէ Խուրի աշխարհը կը տարածուէր մինչև Երասխի հովիտը։

Խուրիները գրաւած չէին «Հայկական բարձրաւանդակը» (Տաշեան ՀԱ. 1932, էջ 173)։ Իրենց մայրաքաղաքը Վազուգանի կամ Վաշուգանի կը գտնուէր ոչ թէ Հայկական բարձրաւանդակին վրայ այլ ամէն պարագայի մէջ Հիւսիսային Միջագետքի մէջ։ (Տաշեան, ՀԱ. 1932 էջ 173)։

Հրոզնի կը կարծէ թէ Վազուգանի կը գտնուէր արդի Ռաս-էլ-Այնի տեղը (տես Արեւելք, թ. 510, 20 մարտ 1933), իսկ Բրոֆ. Խաչատրեան իր հայեցողութեամբ զայն կը դնէ արդի Արղանայի կամ Արղնի տեղը (Հայ. Սեպ. Ծրչ. Պատմ. էջ 13, 20 և այլ)։

Խուրրիներու դէպի արդի Հայաստան տարածուած ըլլալու տեսութեան դէմ կը կանգնի նաև սա իրողութիւնը թէ Հայաստանի աշխարհագրական սահմաններուն մէջ գոյութիւն ունէին ուրիշ պետական միաւորներ, ինչպէս անոր արեւմտեան բաժինին մէջ Հայաշա (Hayasa) որ թերեւս կապ ունէր Hatti-ի հետ, քանի որ Hay (արդէն Հայ ձեւով) ծագած ըլլալու է Hatti-էն։ (ՀԱ. 1932, էջ 169-170)։

Կարելի է ուրեմն որ հոս ալ Նախահայեր կամ Նման ժողովուրդ մը



Մասնաւորապէս «Հաթեան կայսրութիւնը՝ անցեալի հրաշալիքներու կարգին երկար ժամանակ մոռցուած՝ այժմ տեղ մը կը գրաւէ: Աւելի հին եւ երկարատեւ քան Ասորեստանը, որ իր անզուսպ կարմիր անունը թողած է պատմութեան էջերուն մէջ: Հաթեան պետութիւնը Փոքր Ասիոյ մէջ... թողած է մշտատեւ ազդեցութիւն հին աշխարհի ճակատագրին՝ նոյնպէս նաեւ արդի քաղաքակրթութեան վրայ: Այս ազդեցութեան ծագումն երկու աղբիւր ունի. նախ՝ Փոքր Ասիոյ աշխարհագրական եզական դիրքը, որ հաղորդակցութեան բնական գիծն է երկու առաջին քաղաքակրթուած ցամաքամասերու միջեւ ու մշտական հանդիսավայրը զարգացած ցեղերու. երկրորդ՝ ժողովուրդին կորովի նկարագիրը՝ լուսաբանուած իր հիմնարկութիւններուն, կրօնքին ուղղութեամբ, իր վարիչներուն կարողութեամբ: Այսպիսի կիզակէտի մը մէջ միայն կորովի ցեղ մը կարող էր սանձնել այն դերը, որ կը պահանջուէր իրմէն, որովհետեւ անարժէք կամ դիւրին չէր անոր մասնակցութիւնը ազգերու տրամայի մէջ» (Garstang.— The Hittites Vestiges of a Vanished Empire— Wonders of the Past. IV. 858–870)։

Իրեն պարտական է պատմութիւնը այն բազմահազար սեպագիր կաւէ տախտակները, որոնք խուզարկու բահն ու բրիչը լոյս աշխարհ հանեցին 3000 տարիներէ իվեր աւերակներով ծածկուած դիւաններէն և որոնք անակնկալ կերպով այնքան մեծ լոյս սփռեցին շրջակայ երկիրներու պատմութեան վրայ։

Այս հզօր պետութիւնը որ կազմած էին եկուոր ժողովուրդները, դաշնակցութիւն մըն էր քաղաք-պետութիւններու և անկախ կամ կէս անկախ մեծ թագաւորութեանց՝ նախագահութեամբ արքայական մեծ «Արեգ արքային» տոհմին, և իրեն կեդրոն ունէր ապագային Կապադովկիա կոչուած երկիրը, և կ'իշխէր Միջին և Արեւելեան Փոքր Ասիոյ վրայ։

---

բնակած էր որ յետոյ նոյնպէս Հնդեւրոպական Հայերէ տիրապետուած և ձուլուած էր։ (ՀԱ. 1932 էջ 169-170)։

Իսկ Արեւելեան Հայաստանի մէջ կ'ապրէր Manda ժողովրդեան մէկ մասը, որուն բուն զանգուածը Հիւսիսային Երան կը բնակէր և որուն լեզուին նմոյշները ցոյց կուտան թէ Արիական ժողովուրդ մըն էր, թերեւս արդէն Երանեան երանգով (ՀԱ. 1932, էջ 169)։ Emile Forrer, այս Manda կոչումը կը համարէր իբր անուն Հնդիկարիական Միտանւոց, վասնզի կ'ըսէ, արդէն Գ. Հազարամեակին Արեւելեան Հնդեւրոպացւոց Արիական կամ Հնդիկիրանեան խումբը Հիւսիս-Արեւելքէն մտած է Մերձաւոր Ասիա և Նարամ Սինի ժամանակ (2755–2700) Manda և Քր.է առաջ 1999ին Mada կը կոչուի։ Բ. Հազարամեակին՝ Հաթեան պետութեան մէկ մասը նոյնպէս Manda կը կոչուի։

Հրոզնի սակայն հաւանական չի գտներ թէ Խուրրի-Միտանիոյ Հնդիկ-Արեաց իրական անունն ըլլայ Manda, որ Ասորեստանեան-Բաբելական յորջորջանքն է թշնամի բոլոր Հիւսիսային-ազգաց, յետոյ ժամանակաւ՝ յատկապէս Կիմմերացւոց ու Մարաց։ Hrozny կ'ըսէ թէ «ընդհակառակը կը կարծեմ թէ այն անուամբ կը կոչուէր ազգ մը՝ որ Խուրրի-Միտանիոյ հիւսիսակողմը գտնուող աշխարհներու մէջ կը բնակէր և որուն անդամները յայտնապէս Հաթերու ծառայութեան մէջ էին» (ՀԱ. 1932 էջ 169-170)։ Manda բառին ստուգաբանութեան մասին տեսնել նաև Բրոֆ. Խաչատրեանի Հայաստանի Սեպ. Ծրչ. Պատմ. էջ 157-160։

իր հզօրութեան ժամանակամիջոցին (Ի. դար–ԺԸ. դար Քր.Է առաջ) որպէս իրեն թշնամի կամ բարեկամ կը յիշուին մասնաւորապէս երեք երկիրներ։

1. Խուռրի կամ Խառրի, որ լայնածաւալ պետութիւն մըն էր հաստատուած Հիւսիսային Միջագետքի, Հայկական բարձրաւանդակի և Հիւսիսային Սուրիոյ մէջ։

2. Գարաս(ուն)եառ կամ Բաբելոն որուն կը պատկանէր Հարաւային Միջագետքի գերիշխանութիւնը։ Ասորեստան այս միջոցին կը գտնուէր Խարրի-Միտանիի գերիշխանութեան տակ և չունէր իր ուրոյն քաղաքականութիւնը։

3. Մեցիի (=Եգիպտոս) որ Նեղոսի հովտին մէջ իր շքեղութեան ու պերճանքի գագաթնակէտին հասած էր Փարաւոններու ԺԸ. հարստութեան իշխանութեան տակ։

Այսպէս ամբողջ Մերձաւոր Ասիան բաժնուած էր գլխաւորապէս չորս մեծ պետութեանց միջև, որոնք իրարու հետ գործ պիտի ունենային մասնաւորապէս տիրապետութեան համար Սուրիոյ որ կը ներկայացնէր այն հանդիպավայրը ուր ժամանակին մեծ պետութիւններուն տնտեսական շահերը իրարու կը բախէին,



Կեսարիոյ թանգարանի հնաւաքածոյէն արձան թռչունը, գտնուած Սազլըգի կողմը Հաթեան մեծ քաղաքի մը աւերակներու մօտ գտնուող Գըզըլ-Բունար գիւղէն:
Բարձրութիւն 1.25 մեթր. ըստ Prof. Տիւլաբուրդի, Քա.Է առաջ ԺԲ. դարու գործ է:

Բայց Սուրիան ինքնին ի՛նչ կը ներկայացնէր։ Սուրիա և Պաղեստին աշխարհագրականօրէն իրարու միացած, կամուրջ մըն է Նախասիոյ և Եգիպտոսի միջև։ Արեւելքէն մեծ անապատն անանցանելի էր մեծ բանակներու համար։ Արեւմուտքէն ծովը նոյնպէս դժուար անցանելի էր նոյն ժամանակին համար, կը մնար միայն անոնց միջև գտնուող շերտը, որ իր արգաւանդ հովիտներով ու գետերովը ոչ միայն անցք կուտար դէպի Եգիպտոս, այլ իբր բնակավայր կը հրապուրէր նաև անապատի վաչկատուն ժողովուրդներն իսկ՝ գալ և հոն բնակութիւն հաստատել։

Ամբողջ երկիրը բաժնուած ըլլալով բազմաթիւ հովիտներու՝ ամէն մէկ հովիտի մէջ ծրարուած էր մի փոքր իշխանութիւն։ Յաճախ բնական ամուր դիրքի մը վրայ կառուցուած բերդի մը շուրջը կը հաւաքուէին իր տոհմակիցները և այսպէս կը հիմնուէր քաղաք-պետութիւն մը։ Այս փոքրիկ իշխանութիւններու տնտեսական շահերը շարունակ բախման մէջ էին իրարու հետ։ Ամառնայի նամակներուն մէջ կը տեսնենք թէ բազմաթիւ իշխաններ կը գանգատին գերագոյն իշխանաւոր Փարաւոնին՝ իր դրացիին ոտնձգութիւններուն դէմ։



Երկրին այս պառակտեալ դրութիւնը աւելի կը դիւրացնէր շրջակայ պետութիւններու գործը՝ արշաւելու այն տեղ ու ծանր տուրքեր գանձելու։

Ահա դէպի այս շահագրգիռ երկիրն էր որ կը ձգտէին ներքնաշխարհի մեծ պետութիւնները, բռնի ուժով։

Ամէն կողմէն հարստութիւնը կը հոսէր դէպի Սուրիա, սակայն վաճառականներուն կը հետեւէին բանակները, քանի որ նոյն ժամանակի իւրաքանչիւր արքունիք միեւնոյն ատեն իբր առեւտրական մեծ տուն մը կը ներկայանար։

Ոչ միայն ամէն կողմէ վաճառք կը թափէր այս երկիրը, այլ նաև ամէն կողմէն ժողովուրդներ կը խուժէին այս թշուառ երկրին վրայ, կ'այրէին և կը կործանէին ամուր բերդերը և չէն քաղաքները։ Ոչ նուազ անգամ՝ անոր արիւնազանգ դաշտերուն վրայ բուռն և բախտորոշ կռիւներ մղուեցան, որոնք համաշխարհային պատմութեան համար իսկ կարեւորութիւն ունեցան։

Հոն կը գտնուէր այդ ժամանակին պատմութիւնը հասկնալու բանալին։ (Հմմտ. F. Bilabel. Geschichte Vorderasiens und Aegyptiens vom 16–11 Jahrhundert v. Chr. 1927 էջ 192–202 Բրոֆ. Խաչատրեան Հայաստանի Սեպ. արձ. պատմ. էջ 296)։

Դէպի բաց ծով, դէպի մետաղաշատ երկիրներ և մեծ շահաստաններ ձգտիլը, ճամբաներու և երկիրներու տիրելը՝ ժամանակին պետութեանց նշանաբանն էր, վասնզի արդէն շատոնց անցած էր այն շրջանը ուր Եփրատի, Տիգրիսի և Նեղոսի գետահովիտներուն մէջ կազմուած պետութիւնները ինքնաբաւ էին իրենց մեկուսի հովիտին արտադրութեամբ։

Նոյն իսկ Նախապատմական ժամանակներէ սկսեալ Միջագետքը առեւտրական յարաբերութիւններ ունեցած էր Սուրիոյ, ինչպէս Իրանի բարձրաւանդակին, Հնդկաստանի, Կարմիր ծովու, Եգիպտոսի հետ։

Բաբելոնի համար թէպէտև Պարսից ծոցն ու Հնկական ովկիանոսը բաց դուռ էին դէպի վաճառականական կեդրոնները՝ բայց կը թուի թէ այսքանը չէր գոհացներ այն փարթամ ու պերճ կեանքը, որ ծաղկած ու զարգացած էր այնտեղ։ Բաբելոն պէտք ունէր Եգիպտոսի ոսկիին, Սուրիոյ զարգացած գեղարուեստին, Կիլիկիոյ և Կապադովկիոյ մետաղահանքերուն և մետաղական արհեստագործութեան։ Ուշագրաւ է որ Բաբելոնի թագաւորներէն մին (1750-1560) անապատին մէջէն ճանապարհ շինած էր դէպի Սուրիա, ջրհորներ փորել տալով և զինուորական պահականոցներով ապահովելով առեւտրական յարաբերութիւնը։

Խարրի-Միտանին իբր միջերկրեայ ցամաքային պետութիւն բնականաբար նոյնպէս պիտի ձգտէր դէպի Միջերկրական, թէ՛ իր երկրին մետաղային հարուստ արտադրութիւնները ծովեզերեայ մեծ շահաստանները հասցնելու և թէ՛ անոնց արհեստագործական նիւթերն իր երկիրը փոխադրելու համար։

Եւ այդ Խարրի-Միտաններու ներարշաւի ժամանակ (շրջ. 2000 Քր.Է առաջ) անոնց առաջընթաց ալիքները ողողած էին նաև Սուրիան և մինչև հեռաւոր Պաղեստինի սահմանները։

Խարրի-Միտանիները վաղուց տէր էին Հիւսիսային Սուրիոյ և

Ամոզիս' ԺԱ. Հարստութեան հիմնադիր փարաւոնը Հիւքսոսները հետապնդելով Պաղեստինի մէջ, իր դէմը գտաւ Խարրի-Միտանիները և կանգ առաւ։ Անկէ յետոյ երկու պետութիւններու միջև կը բռնկի երկարատեւ պատերազմ Սուրիոյ շուրջ։

Փոքր Ասիոյ մեծ պետութեան' Հաթերու համար նոյնպէս Սուրիա մեծ հրապոյր ունէր, ոչ միայն այն պատճառով, որ այս երկիրն իր բնական հարստութեամբ արդէն լաւ պատառ մըն էր իր երկրակալական նոր բացուած ախորժակին համար, այլ և իր երկրին հարուստ հանքային արտադրութիւններն ու իր արհեստագործութեան արդիւնքները պէտք էր վաճառաշահ կեդրոններ ղրկել, Եգիպտոս, Կիպրոս և թերեւս նոյնիսկ Կրէտէ հասցնել, ծովեզերեայ մեծ քաղաքներէն փոխադրելով, ինչ որ իրենց կը պակսէր։

Հետեւաբար իրերու բնական բերմամբ անիկա ալ պիտի ձգտէր դէպի Սուրիա և հոն գործ պիտի ունենար Մերձաւոր Ասիոյ միւս հզօր պետութեանց հետ որոնք եւս կը ջանային Սուրիոյ տիրապետութեան։

Հաթ պետութիւնը' առաջին անգամ կը թուի թէ մաքառած էր դրացի Միտանիի դէմ, որ նոյնաժամանակ կազմուած պետութիւն մըն էր, ինչպէս տեսնուեցաւ։

Առաջին յիշատակութիւնը այս պայքարներուն կուտայ մեզի Հաթեան Տելիբինուշի արքային (շուրջ 1650 կամ ըստ Garstangի 1775) մէկ արձանագրութիւնը, որով կը խօսի Մուրսիլիս Ա.ի (շուրջ 1750 հաւանօրէն կամ ըստ Garstangի 1925) մէկ արշաւանքին վրայ, ըսելով թէ «Ան յառաջ խաղաց Խալպայ (= Հալէպ) քաղաքին վրայ, Խալպայի կողոպուտ եւ ինչքը ան փոխադրեց Խաթթուշաշ քաղաքը: Այնուհետեւ ան յառաջ խաղաց Բաբելոնի վրայ: Գրաւեց Բաբելոն քաղաքը անոր աւարն ու ստացուածքը փոխադրեց Խաթթուշաշ քաղաքը» (Հայ. Սեպ. Արձ. Պատմ, էջ 367)։

Garstang և Götze կը հաւաստեն թէ նոյնիսկ Մուրսիլիս Ա.ի նախորդը Խաթթուսիլ Ա. (1975 Քր.է առաջ) —որ վերակառուցած է Խաթթուշաշը— արշաւած է Սուրիա —թէև անյաջող կերպով— որ այդ շրջանին կը գտնուէր Միտանիի գերիշխանութեան տակ և նուաճած Հալէպը, որ հզօր պետութիւն մը եղած էր, ինչպէս նաեւ ուրիշ թագաւորութիւններ։

Բայց անոնք կրկին ու կրկին ապստամբած են Հաթերու դէմ և վերստին դաշնակցած Միտանիի հետ (Հայ. Սեպ. Արձ. Պատմ. էջ 373)։

Աշտատի թագաւորութիւնը' որ կը գրաւէր Հալէպի և Եփրատի միջև տարածուող երկրամասը (1), այն միջոցին Միտանիին զինակիցն եղած է և Հաթեանց գրաւած երկիրներուն վերստին նուաճելուն մէջ մեծ դեր խաղացած է։

Որչափ կարելի է եզրակացնել ձեռք բերուած վաւերագիրներէ Նէօ-Հաթեան պետութեան համար շատ սուղ արժած է այս արշաւանքները, վասնզի Տելեպինուշ թագաւորը (շուրջ 1650 կամ ըստ Garstang-ի 1775) որ տիրած է Սուրիոյ, մինչև Դամասկոս Հիւքսոսներու տիրապետութեան շրջանը, վերջին թագաւորն է Հաթեան պետութեան քաղաքական պատմութեան հին շրջանին։

---

(1) Միտանի թագաւոր Տուշրատա (1387-1367) այս երկիրը կ'անուանէր ծայրագաւառ «Ցանկոյս Եփրատի» (Հայ. Սեպ. Արձ. Պատմ. էջ 372)։



Իրենց պատմութիւնը հոս ընդհատում մը կը կրէ 230 կամ 150 տարիներու, յետոյ շարունակելու համար, Տուդխալիաշ Բ. թագաւորով, (շուրջ 1475-1450 համաձայնաբար ըստ Garstang-ի և Götze-ի)։

Այս ընդհատումը պատճառած է ըստ Götze-ի Խարրի-Միտանեան պետութիւնը, որքան որ ալ գրաւոր յիշատակարաններ պակսին մեզի զայն հաստատող։

Դիտելի է որ նման ընդհատում մը նոյն միջոցին կը նկատուի նոյնպէս Բաբելոնի պատմութեան մէջ։

Այս երկուքուկէս դարու ժամանակամիջոցին մէջ Նախասիոյ քաղաքական և մշակութային, ինչպէս նաև առեւտրական յարաբերութիւններու ղեկավարն էր Խարրի-Միտանի, որ Մեծ Ասուրի փլատակներուն վրայ աճած ու զարգացած էր և իբր Հիւքսոս պետութիւն 1600էն (Քր.է առաջ) սկսած կը տիրէր աշխարհի։

Ակկատի Սարգոնի ժամանակէն ի վեր (2500) առաջին անգամ ըլլալով, ամբողջ Նախասիան միացաւ, և նոյնիսկ յարձակեցաւ Եգիպտոսի վրայ։ Մէկ կամ երկու դար Հիւսիսային Միջագետքի մէջ կը գտնուէր աշխարհի միջնակէտը (տես Götze. Das Hettiter-Reich 23 կամ Հայաստանի Սեպ. Արձ. Պատմ. էջ 323)։

Ուրեմն Հաթեան պետութեան յաւակնութիւնը տարածուելու դէպի Սուրիա, հարուստ ու բարգաւաճ երկիրը, և այս նպատակով կատարած փորձերը մատնուեցան ձախողութեան Խարրի-Միտանիներու կողմէն որոնք կատարելապէս կ'իշխէին այս կողմերուն և կը մաքառէին անոնց պահպանութեան համար Եգիպտոսի դէմ։

Սակայն երբ Նէօ-Հաթեան պետութիւնը ընդհատումէ մը յետոյ կը վերակազմուի Քր.է առաջ 1450էն յետոյ, Տուտհալիաս կամ Տուտխալիաշ Բ. արքային ատեն, և կ'սկսի Հաթեան պետութեան պատմութեան նոր շրջանը, որ այս պետութեան հզօրութեան շրջանն է, կը բացուի երկարատեւ պատերազմներու շարք մը, որ Հաթեան կայսրութիւնը թէ' Սուրիոյ և թէ' բուն Խարրի աշխարհին և Հայասայի (= Հայաստանի) դէմ կը մղէ (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 365-366)։

Տուտխալիաշ Բ. նոյնիսկ առաջին արքան Հաթեան նոր պետութեան' Սուրիոյ տիրապետութեան կը ձեռնարկէ։

Անոր համար կ'ա անդուի թէ յաղթած է Խալպայ կամ Հալպայ (= արդի Հալէպ) և զայն գրաւած է որովհետև անիկա դաշնակցած էր Խանիգալբատի։ (1)

Այս վերջինը հզօր էր արդէն Խատտուսիլ Բ.ի (շրջ. 1430) օրով, և այնուհետև մնաց գլխաւոր հակառակորդ Հաթեան պետութեան և գերիշխան եղաւ Հիւսիսային Միջագետքի և շրջակայ մանր պետութեանց մէջ։

---

(1) Խանիգալբատ = Միտանի։ Այս կոչումը տուած էին Եգիպտացիք Թել-էլ-Ամառնայի նամակներուն մէջ (տես մանրամասնութիւնք Բրոֆ. Խաչատրեան Հայ. Սեպ. Արձ. Պատմ. էջ 7 և յաջորդները։ Ըստ Ս. Տէր Մ. Գրիգորեանի (տես [illegible] Ուսումնասիրութիւնք Հին Հայաստանի մասին ԲԶՄՊ. 1928 էջ 137) Խանիգալբատ Փոքր Հայոց երեք գլխաւոր գաւառներէն մէկն էր, (միւսները ըլլալով Կումուխ և Միլլիտտու) ըստ թէ ըստ Ասորեստանեայ արձանագրութեանց։ Կարծիք որ շատ հաւանական չի թուիր։

Տուրհալիաս կամ Տուրխալիաշ (1420 Քր.է առաջ) կ'ըսուի, յաղթող եղաւ ինչպէս Արզաւայի դէմ՝ ի հարաւ-արեւմտեան Փոքր Ասիա կամ Կիլիկիոյ արեւմտակողմը, նոյնպէս Հայասա աշխարհի դէմ՝ այն է արեւմտեան Հայաստան, եւ դարձեալ Կասկայի(1) տոհմերուն դէմ, Հաթեան պետութեան հիւսիսակողմը։ (ՀԱ. 1931 էջ 627)։

Սակայն այս արքային իշխանութեան վերջերն ամէն կողմ պայթող ապստամբութիւնները եւ դրացիներու յարձակումները, լիովին ընկճեցին Հաթեան պետութիւնը, որուն կորիզն էր Խատտուշաշ մայրաքաղաքը եւ Արգէոս լերան շրջանակը։

Արզաւացիք ապստամբելով տիրեցին Տուվանուվայի լեռնադաշտին հարաւային մասին (= Tyana, Տիանա՝ Դամրայ)։ (Տաշեան, ՀԱ. 1931, էջ 627–630)։

Նաեւ Azziները՝ որոնք Հայաշայի կամ Հայաստանի մէկ մասին կ'իշխէին, արշաւեցին մտան «Վերին Աշխարհը», այն է ապագայ Փոքր Հայոց մէկ մասը, հաւանօրէն Արեւելեան Դամրաց աշխարհի մասերով(2)։ (Տաշեան, նոյն)։

Նաեւ Իշուա(3) եւ իր սահմանակից երկիրները սկսան թշնամական գործողութեանց եւ յարձակեցան Տեգարամա աշխարհին վրայ։

Իսկ հիւսիսակողմը լեռնական Կասկա (Հաթերու Գաշ-գաշները) ոչ միայն գրաւեց հիւսիսային գաւառները այլ մինչեւ անգամ տիրեց Խատտուշաշ մայրաքաղաքին, որ այրեցաւեր եղաւ։ (Götze, Das Hettiter Reich. 25)։

Այսպէս, ամէն կողմէ դրացիները կը յարձակէին Հաթեան երկրին վրայ եւ իրենցմէ ամէն մէկը կտոր մը կը խլէին անոնց երկրէն։ (Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 375)։

Այս ձախորդութեանց պատճառն էր դարձեալ Հաթեան նոր շրջանի թագաւորներուն բուռն փափաքը տիրելու համար Սուրիոյ։

---

(1) Ըստ Սաֆրաստեանի Կասկա կամ Գասկա կը գտնուէր Խայասայի կամ Հայաշայի մէջ որուն թագաւորն էր Կրանիս կամ Գարանիս (ԲՋՄՊ. 1933 էջ 205)։ Տաշեան ինչպէս կը տեսնուի Գաշկան կը դնէ Հաթեան երկրին հիւսիսակողմը, Պափլագոնիայի մէջ, ուր անոնց գոյութիւնը կ'ընդունի Սաֆրաստեան (նոյն էջ 207) միայն թէ կը կարծէ թէ անիկա կը բռնէր այն միջոցը որ Պափլագոնիայէն մինչեւ Մեծ Հայք կը տարածուէր։ W. F. Albright իր Philological method in the identification of Anatolian Place-names (էջ 21) գործին մէջ Կասկան կամ Կաշկան կը նոյնացնէ Փոքր Հայքի հետ։ Կաշկացիք ըստ Հիւզինգի (նոյն էջ 207) կը սերէին Կասպից ծովու եզերքներէն։

Բրոֆ. Խաչատրեան կ'ըսէ թէ Հաթերը այս երկիրը կը կոչէին Գաշ-գաշ (Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 238-37)։

(2) Այս բարձրադիր երկիրը կը գտնուէր Վերին Ալիսի, Եփրատի եւ Տօխմա գետերուն միջեւ. (Բրոֆ. Խաչատրեան, նոյն էջ 375)։

(3) Իսուվա կամ Իշուվա (= Իշուա) ըստ Բրոֆ. Խաչատրեանի կը համապատասխանէ աւելի Հանձիթի (Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 16–19, 47–48 եւ 324, 398) վերին Եփրատի վրայ Խարբերդի մօտակայ երկիրներուն (նոյն էջ 178)։ Իր քաղաքներէն մին էր Ալատարմա (նոյն էջ 427)։



Այս անյագ ցանկութեան դէմ կանգնեցաւ Միտանի, որ այդ միջոցին դեռ շատ աւելի զօրաւոր էր քան Հաթեան պետութիւնը։

Ան ո՛չ միայն իր հզօր ձեռքին մէջ ամուր բռնած էր վերին Միջագետքը, այլ ժառանգական իրաւունքի ուժով կը պահանջէր նոյնպէս հովանաւորող գերիշխանութիւն՝ Հիւսիսային Սուրիոյ փոքր պետութիւններուն վրայ, որոնց Արիական անուններ կրող իշխանները ամենայն հաւանականութեամբ ո՛չ միայն ցեղով, այլ եւ տոհմային կապերով սերտ առնչութիւն ունէին Միտանի արքունիքին հետ։

Հիւսիսային Սուրիոյ բոլոր պետութիւնները միացան Միտանիին ընդհանուր թշնամի Հաթ պետութեան դէմ (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 375)։

Այս անգամ դարձեալ յաղթանակեց Միջագետքին հին տիրապետը եւ ստեղծեց մի նոր քաղաքական դրութիւն որ ուղղուած էր Հաթեանց դէմ (նոյն)։

Հաթերը ո՛չ միայն բոլորովին քշուեցան Սուրիայէն այլ նաեւ կորսուցին իրենց իշխանութիւնը Վերին Եփրատի լեռնաստան երկիրներուն մէջ եւ Արեւելեան Փոքր Ասիոյ մէջ։

Եփրատի արմուկէն դէպի Արեւելք գտնուող Իսուվա (=Հանձիթ) երկիրը, մինչեւ Տիգրիսի ակնաղբիւրի երկիրը կը միանայ Խարրի երկրին, այսինքն՝ Միտանի պետութեան հետ։

Տաւրոսի շրջանին արեւելեան կողմի գաւառները կը զատուին եւ բնակիչները ապաստան կը փնտռեն Եփրատի միւս կողմը (այսինքն Խարրիի մէջ)։ Հեռու հիւսիսին մէջ՝ Կազուատնայի(1) թագաւորը կը խզէ իր յարաբերութիւնը Հաթեան պետութեան հետ եւ կը դառնայ «Ճորտ Խարրիներուն» «Միտանիի թագաւորին» (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 324)։

Հաթեան կոչուող պետութիւնը այսպէս նկուն եւ նուաստացած վիճակի մէջ էր, երբ գահ բարձրացաւ իր թագաւորներու շարքին մէջ իր նախաձեռնութեամբ, քաջութեամբ եւ դիւանագիտութեամբ նշանաւոր Շուպպիլուլիումաշ(2) (1395–1355 Քր.է առաջ) որ իսկական հիմնադիրը դարձաւ Հաթեան դաշնակցային մեծ կայսրութեան։

Անիկա գահ կը բարձրանար վտանգաւոր ժամանակամիջոցի մը, քանի որ Հաթեան կայսրութիւնը մատնուած էր ներքին երկպառակութեանց եւ կայսրութեան մի քանի գաւառները անջատուած էին։

Շուպպիլուլիումաշ մեծ արքայն հանդիսացաւ հիմնադիրը Հաթեան գերիշխանութեան, թէ՛ պատերազմներով եւ թէ՛ ճարտար դիւանագիտութեամբ իր կայսրութիւնը բարձրացնելով ժամանակին մեծ պետութեանց՝ Եգիպտոսի եւ Բաբելոնի կարգին։

Անիկա նուաճեց Արզաւեան աշխարհները, նոյնպէս պատերազմեց Հայաշայի դէմ, որուն Հուկանա արքային հետ դաշինք կնքեց։

Այս դաշնագրութիւնը, որ մնացած է Պօղազքէօյի դիւանին մէջ եւ

---

(1) Կազուատնայի կամ Կիզուատնայի տեղի մասին տես վերը էջ 45։

(2) Ըստ Արշակ Սաֆրաստեանի Սուպպիլուլիումա կամ Շաբբիշուլիումա (1380–1346 Քր.է առաջ)։ (Տես ԲՋՄՊ. 1933 էջ 202)։ Բրոֆ. Խաչատրեան կ'ուղղագրէ Սոնպիշուշիումա։ Տաշեանի ուղղագրութիւնը նախընտրեցի։

միւս նման դաշնագրութեանց հնագոյնն է, կը հաստատէ թէ ըստ Հաթեան արքաներու սովորութեան, Հուկանաշ փեսայացած էր Հաթ արքունիքին։ (Տաշեան, ՀԱ. 1931 էջ 627-630)։

Անկէ յետոյ Հաթեան արքայն ձեռնարկեց հպատակեցնելու Ասորիքն։

Բնականաբար հոն իր գլխաւոր հակառակորդը հանդիսացաւ Միտանիի արքան՝ Տուշրատտա (1387–1367)։

Ձեռնարկութիւնը նախ յաջող չէր և Հաթեան արքան ծանր պարտութիւն մը կրեց, սակայն ինչպէս կ'երևի անիկա անվհատ աշխատեցաւ իր նպատակին հասնելու համար և կը թուի թէ յաջողած է պառակտել նաև Խարրի–Միտանի մեծ կայսրութիւնը, զայն երկուքի բաժնելով։

Արտատամա Բ. (1366–1867) կը տիրէր Հայաստանի մեծագոյն մասին՝ Խարրի անունով, իսկ Տուշրատտան (1387–1367) հարաւ–արեւմտեան Հայաստանի (Ծոփաց աշխարհին և Աղձնիքին) ու Հիւսիսային Միջագետքին իր ճորտ իշխանութիւններովը, և կը կոչուէր Միտանի. (տես Հայ. Սեպ. Ծրջ. Պատմ. էջ 320)։

Շուպպիլուլիումաշ կղզիացնելու նպատակաւ իր ոսոխ Միտանին, յաջողեցաւ իր կողմը շահիլ Խարրի աշխարհին տէր՝ Արտատամա Բ.ը (1366–1359) որ թէև Տուշրատտայի ազգականն էր, հակառակորդ էր անոր— անշուշտ իր աշխարհին նախկին գերիշխանութեան պատճառով— որմէ բաժնուած էր Միտանի՝ Տուշրատտայի հօր ատեն։

Ուստի Արտատամայի հետ ալ դաշինք կնքեց, նման Հայաշայի Հուկանաշ արքային դաշինքին։ Ասիկա պատճառ եղաւ որ Տուշրատտա արշաւէ Հաթեան երկիրները, բայց ետ մղուեցաւ։ Տուշրատտա այն ատեն դաշնակցեցաւ Եգիպտոսի հետ, որով Մերձաւոր Արեւելքի երրորդ հզօր պետութիւնն ալ եկաւ խառնուիլ երկու մեծերու պայքարին։

Բայց ասիկա ալ օգուտ չըրաւ։

Հաթերը հետամուտ եղան Ասորիքի փոքր պետութեանց վրայ գերիշխանութիւն ձեռք բերելու և անարգել առաջացան մինչև Դամասկոս։

Շուպպիլուլիումաշ անձամբ եկաւ Սիւրիա, և Հալէպի ու Կարկամիշի մէջ իբր ճորտ թագաւորներ հաստատեց իր Տիպիլինոս և Պիյասիլիս որդիները։

Քիչ յետոյ Միտանի բոլորովին կործանեցաւ, Իշուա=Ծոփքի պատճառով, վասնզի Տուշրատտա անոր դէմ թշնամութեան սկսած էր։

Շուպպիլուլիումաշ անցաւ Իշուան (Հանձիթ) և այս աշխարհին վրայէն մտաւ Ալշէ(1) աշխարհը, որուն արքան զինակից դարձաւ աշխարհակալին։

Հաթեան բանակն անցաւ այնուհետև Կուտմար(2) բերդը (=Քազերթ

(1) Ալշէ=Ալզի=Alse ըստ Բրոֆ. Խաչատրեանի կը համապատասխանէ Աղձնիքի (տես Հայ. Սեպ. Ծրջ. Պատմ. էջ 11-16) արեւմտեան Տիգրիսի աւազանը մինչև Պահտան Սուի խառնուրդը (նոյն, էջ 20)։

(2) Կուտմար՝ Բրոֆ. Խաչատրեան կը նոյնացնէ Քրիմարիոն= Քեղմար քաղաքին որ կը գտնուէր Ջիբինէ (=Ջաբ) գետին վրայ դէպի վերը։ (նոյն էջ 20)։



կամ Նեմփիոս) և Շուտա(1) և հասաւ ի վերջոյ Վասուգանի՝ Տուշրատտայի և Միտանիի մայրաքաղաքը։ Հաթեան արքայն դարձաւ Ասորիքէն, ուր իր իշխանութիւնը վերջնականապէս հաստատեց և գրաւեց Եփրատի արեւմուտքն եղող բոլոր աշխարհները, իսկ Եփրատի արեւելքն եղածները նախ թողուց իրենց վիճակին մէջ։

Հոս ի հարկէ շուտով նոյն գահակալութեան կռիւները սկսան, մանաւանդ Տուշրատտայի մահուընէ կամ մանաւանդ իր որդիին ձեռքով սպաննուելէն ետքը։ Խարրիները կ'ուզէին կրկին տիրել Միտանիի և իրենց առաջնորդն էր այս միջոցին Շուտառնա (Սուտառնա) Բ. (1350) որդի Արտատամայի, բայց ի վերջոյ Հաթեան արքայն կողմնակից եղաւ Մատտիվազայի (1350) Տուշրատտայի որդիին, զոր իրեն փեսայացուց և հետը կռեց այն դաշինքն, որուն բնագիրը կարեւոր յիշատակարան մըն է։

Այս խռովութեանց միջոցին Ասսուրացիք կամ Ասորեստանեայք և Ալշէացիք կամ Աղձնիք իրենց մէջ բաժնեցին Միտանեան աշխարհները։ Այս կարեւոր տեղեկութիւնը ուղղակի դաշնագրին բառերէն է. «Եւ Միտանի կործանեցաւ լիովին եւ արք աշխարհին Ասսուր եւ աշխարհին Ալշէ զայն իրենց մէջ բաժնեցին»: (ՀԱ. 1931 էջ 627–630, հմտ. նաև Բրոֆ. Խաչատրեան, նոյն, էջ 363–412 և յաջորդք)։

Այսպէս Խարրիներու ներքին պառակտումը պատճառ եղաւ որ Ալշեցիները և Ասորեստանցիք բաժնեն Միտանին, որուն նկատմամբ Հաթեան «Արեգ արքան» Շուպպիլուլիումաշ ցոյց կուտայ վեհանձնութիւն, անոնց թշուառութիւնը մեղմելու համար եզ, ոչխար, ձի ղրկելով։

Բուն շահողն ի վերջո ոչ այնչափ Աղձնիք էին, որչափ Ասսուր կամ Ասորեստան, որ մինչև այն ատեն համեմատաբար փոքր իշխանութիւն մըն էր և Միտանեան պետութեան հպատակ, իսկ Նինուէ այնուհետև սկսաւ իր աշխարհակալութեանց, որոնց զոհերէն մին եղաւ նաև իր գործակիցը՝ Ալշէ կամ Ալզի ասորեստանեան շրջանին։ (ՀԱ. 1931, էջ 630)։ Իսկ Հաթեան կայսրութիւնը երկար պայքարէ մը յետոյ, յաջողեցաւ գրաւել Սուրիան, որ կռուախնձոր դարձած էր Միտանի և Հաթեան կայսրութեանց միջև, ինչպէս էր նախապէս Միտանիի և Եգիպտոսի միջև։

Հաթ արքայն այժմ կացութեան տէրն էր։ Եփրատի աջ կողմի Միտանիի ճորտ բոլոր երկիրները իրեն հպատակ էին. բուն Միտանին կործանուած ու օտարներու միջև բաժնուած էր։ Դէպի հարաւ յառաջխաղացման համար այլեւս ո և է արգելք չի կար, եթէ ուրիշ զօրութիւն մը — նոյնքան նախանձորդ և վաղուց իր ճամբուն վրայ կանգնած— թոյլ տար։

Պայքարը արդէն վաղուց սկսած էր, վասնզի Ասորիքի և Լիբանանի սահմաններուն մէջ, շփման եկած էր շատոնց Հաթ պետութիւնը, Եգիպտոսի Փարաւոններուն հետ, որոնք Հիւքսոսները, այսինքն Ասիական ժողովուրդները, Եգիպտոսէն վանելէն յետոյ արշաւած էին Ասիա

(1) Այժմու Սուտա, Տուր-Աբդինի լեռներուն մէջ (ըստ Տաշեանի) կամ անոր կողերուն վրայ, Նիզիպինէն 31 քիլ. դէպի հիւսիս. (Հայ. Սեպ. Ծրջ. Պատմ. էջ 20)։

եւ այս ժողովուրդները իրենց բնակավայրին մէջ հարուածել կ'աշխատէին։

Թութմոսիս կամ Թօթմէս Ա. (1541–1516 Ք.Ե. առաջ) առաջացաւ մինչեւ Եփրատի եզերքը եւ կայսրութեան սահմանը Նահարինայի(1) երկրին մէջ դրաւ։

Միտանինները այս միապետին թոռան ժամանակ, այսինքն Թօթմէս Գ.ի օրով (1503-1449 կամ 1516–1461) Եգիպտոսի դէմ ելան, եւ երկու կայսրութիւնները երկար ատեն մաքառեցան իրարու հետ Սուրիոյ եւ Պաղեստինի տիրապետութեան համար փոփոխակի յաջողութիւններով։ (Մանրամասնութիւնք՝ տես Բրոֆ. Սէյսի գործը, էջ 13-28) միայն անիկա կը կարծէ թէ Հաթերն են կռուողները, մինչ անոնց պէս Հնդեւրոպական Արի-Միտանիներն էին։ (տես նաեւ Բրոֆ. Խաչատրեանի Հայ. Սեպ. Ճրչ. Պատմ. էջ 309-320 եւ յաջորդք)։

Թութմոսիս Գ.ի մահէն յետոյ Սուրիա կ'ապստամբի եւ Ամենոփիս Բ. 1447ին կը մեկնի Սուրիա զսպելու համար ըմբոստութիւնը, սակայն չի յաջողիր։ (Բրոֆ. Խաչատրեան, նոյն, էջ 318)։

Թութմոսիս Դ. (1420–1401) դարձեալ կ'արշաւէ Պաղեստին եւ Սուրիա եւ կը դառնայ այն համոզումով թէ պէտք է հիւսիսին մէջ բարեկամ մը ունենալ եւ այն Միտանին կրնայ ըլլալ, որ նոյնպէս կը կարօտէր զօրաւոր դաշնակիցի մը՝ պաշտպանուելու համար իր պետութեան հիւսիս-արեւմուտքը սպառնական դիրք բռնած՝ Հաթ պետութեան դէմ, որ ո՛չ միայն ահարկու թշնամի մըն էր Միտանիի դէմ այլ նաեւ Եգիպտոսի։

Ան հետզհետէ առաջ կը խաղար եւ իր իշխանութեան կը հպատակեցնէր Սուրիոյ եւ Փիւնիկէի իշխանները որոնք Փարաւոններու օգնութիւնը կը խնդրէին։

Բախումը անխուսափելի էր երկու պետութեանց մէջ, մանաւանդ Միտանիի կործանումէն յետոյ։ Հաթերը՝ Շուպպիլուլիումաշի օրով արդէն հասած էին Նիբլանի (=Լիբանանի) լեռնաշղթային եւ Եփրատ գետին, եւ դէմ առ դէմ եկած էին Եգիպտացիներուն։ (հմտ. ՀԱ. 1931, էջ 52 եւ 1933, էջ 538)։

Առաջին բախումը որ Հաթերը եւ Եգիպտացիք ունեցան պատահեցաւ Ամենովփիս Դ.ի (1383–1365) օրով, որ ժամանակակից էր Շուպպիլուլիումաշի։

Հաթերը յաղթեցին եւ Եգիպտացւոց ձեռքէն խլեցին Սուրիան եւ Պաղեստինը։ (Տոքթ. Նշան Մարտիրոսեան, Արեւելք, թ. 501, 14 մարտ 1933)։

Հաթերը այսպէս Շուպպիլուլիումաշի օրով Հիւսիսային Սուրիոյ մէջ տեղաւորուելէ յետոյ իրենց ուշադրութիւնը դարձուցին դէպի Եփրատ որուն միւս կողմը զօրանալ սկսած էր Ասորեստանեանց պետութիւնը որ Միտանին գրաւած ըլլալով վտանգ կ'սպառնար Հաթեանց՝ իր հետզհետէ զօրանալով։

Այս նորածագ ուժին դէմ կանգնելու համար Շուպպիլուլիումաշի որդին եւ կարկամիշի նորը թագաւորը՝ Պիլասիլիս գրաւեց Միտանին, (Քէմալէտտին էջ 127)։

---

(1) Ս. Գրոց Արամ-Նահարայիմը, որ է Երկուց Գետաց, այսինքն Միջագետաց Արամը։



Երբ Շուպպիլուլիումաշ մեռաւ եւ իրեն յաջորդեց իր որդին՝ Առնուանդա Բ. (կամ Առնուվանդաշ Բ.) (շուրջ 1354) պահպանելու համար նոր գրաւուած այդ երկիրները, դաշինք կնքեց Ամուրրուի թագաւոր՝ Դուբլի Տէշուպի եւ Խալպայի թագաւոր՝ Ռիմի-Շարմայի հետ (ԲՋՍՊ. 1933, էջ 204)։

Այս պատուար պետութիւններուն հետ Հա'թ արքան զինակցութիւն կնքելով կ'ուզէր ապահովել իր հարաւային սահմանները, որոնք այժերու նոր դասաւորութեան մը հետեւանօք կը գտնուէին թէ՛ Եգիպտոսի եւ թէ՛ Ասորեստանի կրկնակ սպառնալիքին տակ, առանց հաշուի առնելու ներքին ապստամբութիւնները որոնք ծայր տուած էին Շուպպիլուլիումաշի մահէն յետոյ։



Կեսարիոյ թանգարանը պահուած Բունար Պաշը Գազային Գուրու-Գույր գիւղէն բերուած մարմարեայ արձանագրութիւն:

Dr. Gelb կը կարծէ թէ այս արձանագրութիւնը կը պատկանի ջրանցք մը շինող թագաւորի մը:

Dr. Bossert կը կարծէ թէ «Արեգ արքայ» Խասսուսիլի կը պատկանի այս արձանագրութիւնը:

Առնուանդա Բ.ի յաջորդեց Մուրսիլ Բ. (շուրջ 1343) Շուպպիլուլիումաշի երկրորդ որդին, տակաւին շատ դեռատի, որ ինքզինքն գտաւ ընդհանուր ապստամբութեան մը դէմ։

Իր գահակալութեան առաջին տասնամեակը անցուց մասնաւորապէս Փոքր Ասիոյ մէջ պատերազմ ընելով։

Այս պատերազմները գլխաւորապէս Կաշկայի, Կիլիկիոյ (= Արզաւա) եւ Փամփիլիայի (= Անտիոք) երկիրներու մէջ տեղի ունեցան։

Արզաւա չափազանց նեղութիւն պատճառեց եւ շատ դբաղեցուց։ Վերջապէս Ալազիա փախելով Հաթերուն ձեռքէն ազատեցաւ։

Մուրսիլ Բ.՝ Կիլիկիոյ մէջ 66,000 հոգի ջարդեց եւ հպատակեցուց Փամփիլիայի թագաւորը։

Մուրսիլ իր գահակալութեան չորրորդ տարին Ankura (= Անկիւրիա = Էնկիւրի) երեւայ։

Մուրսիլ յետոյ արշաւեց Azziի կողմերը և մինչև Մելաս (Տիգրիս) իր սահմանները ընդարձակեց։

Նոյնպէս ամրացուց Սուրիոյ հիւսիսակողմը իր դիրքը։

Մուրսիլի հովանիին տակ գտնուող Սուրիոյ թագաւորները մինչև Եգիպտոսի հովանաւորութեան տակ գտնուող Պաղեստին տարածուեցան, և ինչպէս կ'երևայ Եգիպտոս պահ մը համակերպած է Սուրիայէն հրաժարելու վասնզի Ռամսէս Ա. (1328 - 1327) որ էր ԺԹ. հարստութեան հիմնադիրը, կը համակերպի Հաթեան կայսրութեան հետ յարձակողական և պաշտպանողական դաշնագիր ստորագրելու և ճանչնալու զայն հաւասար Եգիպտոսի։ Բայց իր յաջորդները չպահեցին խաղաղութիւնը և փորձեցին Սուրիոյ գերիշխանութեան համար պատերազմը շարունակել և երկարատև պայքարներու պատճառ դարձան։

Մուրսիլ անձամբ բանակին գլուխն անցած գնաց Պալայի կողմը (Փափլագոնիա, Բիւթանիա, Փռիւգիա) և խաղաղեցուց այդ կողմերը և պահակազօրք դրաւ։

Իզմիրի կողմը Nemfiի (= Նիֆ = այսօր՝ Քէմալ փաշա) նշանաւոր քանդակները պահած են անունը Մուրսիլի, որ յանդուգն և զինուորական բարձր կարողութիւններով օժտուած վեհապետ մըն էր։

Մուրսիլ Բ. (1320) մեռաւ և իր երկու զաւակները Մուվատալիս և Խատտուսիլ Գ. իրարու յաջորդեցին (1330 - 1265)։

Առաջինին թագաւորութեան շրջանին երկրորդը Սև Ծովու կուսակալութիւնները կառավարեց։

Մուվատալիս՝ յաջողեցաւ դարձեալ Սուրիոյ շատ մը իշխանութիւնները իր հովանաւորութեան ենթարկել, զանոնք բաժնելով Եգիպտոսի փարաւոնէն։

Մեծ Արեգ Արքայ Մուվատալիս որ շատ մը դաշինքներ կնքած էր շրջակայ երկիրներուն հետ և դաշնակցային միութիւն մը ստեղծած՝ երկիւղ կը պատճառէր Եգիպտոսի՝ Ռամսէս Բ. (1295 - 1208) փարաւոնին, որ կռահելով սպառնացող վտանգը կանխելու և դիմագրաւելու համար զայն, դէպի Հիւսիսային Սուրիա առաջացաւ,

Կատէշի (Kades) մէջ երկու բանակները իրարու հետ չափուեցան (1296)։ Մեծ ճակատամարտ մը տեղի ունեցաւ, ու Հաթերը ճարտարութեամբ փարաւոնին բանակը երկուքի բաժնեցին և զայն պարտութեան և անկանոն փախուստի մատնեցին։

Հաթերը զանոնք հետապնդեցին իրենց մարտակառքերով և զարհուրելի խուճապի ենթարկեցին Եգիպտական բանակը։

Հաթ մարտակառքերը փարաւոնի բանակին ետևէն հասնելէ յետոյ եթէ պատրաստ որսը չձգէին և աւարառութեան չսկսէին, Ռամսէսի և իր բանակին գերի իյնալը կամ մարտակառքերու տակ կոտոր ըլլալը անխուսափելի էր։

Հաթերու այս սխալէն օգտուեցաւ Ռամսէս Բ. և վերստին պատերազմելու համար պատրաստութիւններ տեսնելու պատեհութիւնը գտաւ, և շարունակեց պատերազմը՝ ընդդէմ Խատտուսիլ Գ.ի որ 1295ին յաջորդած էր իր եղբօրը։

Ամուրրուի թագաւորութիւնը՝ որ երկու կայսրութեանց միջև պատուար պետութիւն մըն էր և աւելի բարեկամ Հաթերու, դէմ ելաւ անոնց և Եգիպտոսի յարեցաւ։

Կիլիկիա ևս հաւատարիմ չմնաց։ Աւելի արևմուտք գտնուող երկիրներն ալ Հաթերէն բաժնուեցան։



Եգիպտոսի փարաւոնը յաջողեցաւ նպաստաւոր պայմաններով Հաթերու հետ կնքել խաղաղութեան դաշինք մը (1280 Քր.է առաջ) որուն բնագիրը գտնուած է Ակկատերէն և Եգիպտերէն լեզուներով (տես Տօք. Նշան Մարտիրոսեան Արեւելք թ. 501, 14 մարտ 1933)։

Խատտուսիլ Գ. (1295 - 1260) այս առթիւ 1267ին Եգիպտոս գնաց՝ իր զինակիցին այցելութեան։

Հաթերու թագաւորին այս ընթացքը հաւանօրէն իրեն շարժառիթ ունէր ուրիշ պետութեան մը՝ Ասորեստանեայց՝ հետզհետէ զօրանալը, իր հարաւային սահմանին վրայ։

Խատտուսիլ Գ.ի Ռամսէսի դէմ մղած պատերազմին մէջ թէև Քաղդէացւոց թագաւորը Քատաշման Թուրկու իր կողմը բռնեց սակայն ընդհակառակը Ասորեստանցիք մտան Հաթեան երկիրները։

Սաղմանասար Ա.ի(1) մէկ արձանագրութիւնը Ասորեստանեանց այս արքային համար կ'ըսէ թէ «վսեմացաւ մուտ գործել Խանիգալբատ երկիրն, որ իր նախորդները փորձած անգամ չէին» (տես Prof. Maspero, The Struggles of Nations, էջ 608)։

Խանիգալբատի տեղը ուր որ ալ ըլլայ(2) անիկա Միտանիի մաս կը կազմէր, և անոր կործանումէն յետոյ անցած էր Հաթեան կայսրութեան։

Խատտուսիլի բարեկամութիւնը Եգիպտոսի փարաւոնին հետ սակայն կարող չեղաւ անխուսափելի բախումին առջևն առնել։

Սաղմանասար Ա. և Խատտուսիլ Գ. իրարու հետ կռիւի բռնուեցան։ Հաթ և Ասորեստանեան բանակները մղեցին մեծ ճակատամարտ մը որուն մէջ մեռաւ ծերունի Խատտուսիլ և պատերազմը շահեցաւ Սաղմանասար Ա.։

Խատտուսիլ Գ.ի յաջորդեց իր որդին՝ Դուտխալիաս Գ. (1260–1230), ծնած Կիզանուացի իշխանուհիէ մը, որուն կը վերագրուի իր որդւոյն վրայ գերազանց ազդեցութիւն մը, և Եգիպտոսի փարաւոնին հետ բարեկամութիւն մշակելու քաղաքականութեան մը գաղափարը ընդդէմ Ասորեստանի։

Հաթ արքային մեծ աղջիկը կնութեան տրուեցաւ փարաւոնին(3) (1260) և անոր հետ բարեկամութեան դաշինք կնքուեցաւ։

Թերևս այս բարեկամութեան վստահելով Դուտխալիաս Գ. փորձեց Ասորեստանի յառաջխաղացման արգելք հանդիսանալ, և Ամուրրուի թագաւորին հետ դաշինք կնքեց, որով անիկա պիտի արգիլէր Ասսուրի վաճառականներու ծովեզերք գալը և իր հպատակներուն Ասորեստանի հպատակներուն հետ յարաբերութեան մտնելը։

Այս արարքը գրգռեց Ասորեստանցիներուն վրէժխնդրութիւնը։

---

(1) Սաղմանասար Ա.ի իշխանութեան ժամանակամիջոցը ոմանք նշանակած են 1325–1300։ Նորագոյն քննութեանց համաձայն աւելի ուշ ժամանակներու մէջ կ'իյնայ։ Սիտնէյ Սմիթ՝ 1280–1250 և Էմիլ Ֆորրեր՝ 1266–1243 կը նշանակեն անոր իշխանութեան ժամանակամիջոցը։

(2) Տես վերը էջ 101։

(3) Ոմանք այս թագաւորին համար ալ կ'ըսեն թէ իր հովանաւորութեան տակ գտնուող Կիլիկիոյ թագաւորին հետ իր վեսին Ռամսէս Բ.ի այցելեց Եգիպտոս։

Անոնք յարձակեցան Հայթ երկիրներու վրայ և 28,000 Հաթեր գերի վարեցին։

Այս առաջին շփումները անխուսափելի կերպով աւելի ծաւալ պիտի գտնէին և Ասորեստան պիտի նեղէր թերեւս Արեւելքէն Հաթե-րը, եթէ ինքն Քաղդէաստանի հետ դժուարութիւններ չունենար։

Այս պատճառով Հաթերը ազատութիւն գտան, և նոյնիսկ Դուտ-խալիա Գ.ի յաջորդը Առնուանտաս Գ. (1230ին կը գահակալէ) որ Եգիպտոսի հետ բարեւոք յարաբերութիւններ ունէր Ասսուրներու և Քաղդէացւոց միջև մղուող կռիւներէն օգտուելով գրաւեց վերստին Կարկամիշը։

Հաթեան պետութիւնը այսպէս ամուր դրութիւն մը ստեղծել կարծած մէկ պահուն, Արեւմուտքէն եկող ահաւոր մրրիկի մը դիմա-գրաւել պարտաւորուեցաւ։

Շուրջ 1200ին (ԺԳ. դարուն վերջը կամ ԺԲ.ի սկիզբը Քր.է առաջ), նման Քր.է առաջ 2000 թուականին պատահածին դարձեալ վերուվայր կը շրջի Նախասիան, և ԺԲ. դարուն կը կործանի Հաթեան կայսրու-թիւնը որ ամբողջ եօթը դար իր ձեռքերուն մէջ ունեցած էր Նախա-սիայի գերիշխանութիւնը։

Վերջին թագաւորը կ'ըլլայ Դուտխալիաս Դ. (1210) որուն գործերը անծանօթ են։

Անհարկու հոսանքը՝ գաղթական ժողովուրդներու՝ Հաթերը խուճա-պի կը մատնէ։

Գաղթականական հոսանքին առջև անոնցմէ մաս մը սարսափա-հար խոյս կուտայ։

Փղշտացիներ և Հաթեան տարբեր պարունակող հրոսներ կ'առա-ջանան Սուրիոյ հարաւակողմը մինչև Եգիպտոսի սահմանը։

Թրակ-Փռիւգեան այս հեղեղը որ պատմութեան մէջ ծանօթ է «ծովածողովուրդներու» արշաւանք անունով, մինչև այժմ ոչ մի գրաւոր յիշատակարանով հաստատուած չէր։

Նախ Տրոյայի պեղումները երեւան բերին անոնց գործած աւերը և հրկիզութիւնը հոն։

Ցետոյ Հաթեան պետութեան գրաւոր յիշատակարականներուն մէկ անգամէն ընդհատուիլը փաստ են թէ ահաւոր աղէտ մը պատահած է և Տրոյան կործանող երկրաասասան շարժումը տարածուած է նաև Նախասիոյ խորերը։

Իսկ իբր գրաւոր յիշատակարան մեզի հասած է Եգիպտոսի Փարա-ւոն Ռամսէս Գ.ի (1200-1168) կարճ մէկ արձանագրութիւնը (տես պատճէնը Բրոֆ. Խաչատրեանի Հայաստանի Սեպ. Տրչ. Պատմ. էջ 234) որ շատ պերճախօսօրէն կը պատկերացնէ այն աւերը որ անոնք գործած են իրենց արշաւանքի ընթացքին։

Փռիւգացիներ, Թրակացիներ, Մոսքեր և ուրիշ հնդեւրոպական ցեղեր, Վոսփորի ուղղեգիծով Փոքր Ասիա մուտք գործեցին, մէկ ան-գամէն տարածուեցան և յանկարծակիի բերին խաղաղ ժողովուրդ-ներ։ Ոչ մէկ երկիր չկրցաւ դիմագրաւել անոնց գրոհին։ Անոնք կոր-ծանեցին Եգէական քաղաքակրթութիւնը, աւերեցին Սուրիան և հոն բերին Փղշտացիները, անտարակոյս բուռն ու երկարատև գրոհներով՝ Խաթթուշաշի, լայնածաւալ Հաթեան կայսրութեան մահացու հար-ուածը տուին և տապալեցին և հիմնայատակ ըրին այս կայսրու-թիւնը, որ Փոքր Ասիոյ կեդրոնը գրաւած էր։



Անոնցմէ մաս մը առաջացաւ դէպի Հայկական Բարձրաւանդակը և մէկ ուրիշ թեւը ծովով և ցամաքով յառաջացաւ դէպի Եգիպտոս, խարոյկի բոցերն իրենց առջեւէն ունենալով և կործանելէ յետոյ նաև Ալասիան(1)։

Անոնց յորձանքը կանգ կ'առնէ Ամուրրուի մէջ (Հիւսիսային Սուրիա)։

Ահա այն ամէնը, ինչ որ յայտնի է այս մեծ արշաւանքին մասին (Բրոֆ. Ա. Խաչատրեան Հայաստանի Սեպ. Տրչ. պատմ. էջ 234, 366 նաւյլն. Տոթ. Նշան Մարտիրոսեան Արեւելք, թ. 501, 14 մարտ 1933), Գոնդրնօ, Les Tablettes de Kerkouk էջ 11)։

Ազգերու այս նոր գաղթականութենէն յետոյ այլեւս չենք գտնար Հաթեան միաձոյլ մեծ պետութիւնը այլ միայն մանր պետութիւններ որոնք բեկորներն են հին պետութեան կամ նոր կը կազմուին (ՀԱ. 1931 էջ 53)։

Ըստ ոմանց Հաթերը իրենց երկիրը արշաւող Հնդեւրոպական ցե-ղերուն չկրնալով դիմագրաւել, ԺԲ. դարուն ստիպուեցան Սուրիա և Միջագետք գաղթել, ուր նոր պետութիւն մը հիմնեցին։ Եփրատի ափունքը գտնուող Կարկամէշը (հիմա Ճարապլուս) իրենց նոր մայր քաղաքը եղաւ։

Ուրիշներ կը պատմեն թէ Կարկամէշը հորտ պետութիւն մըն էր որ Շուպպիլուլիումաշ (1395-1353) հաստատած էր Եփրատի վրայ, Միտանիէն խլած երկրամասին մէջ (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 366)։

Իրենց չէն ու շող հայրենիքէն վտարուած Հաթերը աւելի քան հինգ դար քարշ տուին իրենց գոյութիւնը Կարկամէշին շուրջ, մայր պետութեան կործանումէն յետոյ, մինչեւ որ Ասորեստանի թագաւոր Սարգոն 714ին վերջնական հարուածը տուաւ՝ գերի վարելով վերջին Հաթ թագաւոր Պիսիրիսին, որմէ յետոյ կ'անհետանայ պատմութենէն Հաթ անունը թէ իբր պետութիւն և թէ իբր ժողովուրդ։

Իրենց ճակատագիրը անկէ յետոյ մեզի բոլորովին անծանօթ կը մնայ։

Այս ժողովուրդէն որ այս հին ժամանակներուն Փոքր Ասիոյ սիր-տին վրայ — յետոյ Կապադովկիա, և Փոքր Հայք, Կիլիկիա, և Հիւսի-սային Ասորիք կոչուած երկիրներու մէջ — հիմնած էր հզօր կայսրու-թիւն մը, կը մնան այսօր դեռ արձանագրական յիշատակարաններ ցրուած Փոքր Ասիոյ արեւմուտքէն մինչեւ արեւելք, մէջը ըլլալով նաեւ Հիւսիսային Սուրիան։

Նոյնպէս Եօզկաթէն Սանկուրլու գացող ճամբուն գրեթէ կէսերը կը գտնուին երկու հոյակապ Հաթեան քաղաքներու աւելի շիտակը՝ մայրաքաղաքներու աւերակները։

Անոնք են Պօղազ Քէօյ և Իւյիւք։ Պօղազ քէօյ՝ կը ներկայացնէր վայրը՝ Խաթթուշաշի (Հատտի = Խատտի կամ Հատտուսաս) վաղեմի մայրաքա-

---

(1) Alašja, ոմանք նոյնացուցած են Կիպրոսի հետ։ Götze եկած է այն եզրակացութեան թէ «հակառակ տիրող կարծիքին Alaschia եր-կիրը չէ կարող Կիպրոսը ըլլալ, այլ պէտք է փնտռել Փոքրասիական ցամաքի վրայ»։ Բրոֆ. Խաչատրեան փաստացի տուեալներով կը միացնէ Alzi = Աղձնիքի հետ։ (Տես Հայաստանի Սեպ. Տրչ. Պատմ. էջ 136-137)։

ղաքին նախահայթերու, որ Նէս-Հաթերը կործանեցին և ապա վերա-
կառուցելով իրենց մայրաքաղաքը գործուցին։
Մեծագոյն մասը Հաթեան սեպագիր և պատկերագիր յիշատակա-
րաններուն՝ գտնուած են Հաթեանց երբեմնի այս մայրաքաղաքին
մէջ, և անոնցմով է որ լուսաբանուած է մասամբ հնագոյն Արեւելքի
միգապատ պատմութիւնը։

Այս քաղաքին արքայական դիւանատուններէն և գրադարաններ-
րէն երեւան հանուեցան, պատմական, կրօնական, դիւանագիտական
բովանդակութեամբ վաւերա-
խրատաբանական և գիւցազներգական պարունակութեամբ վաւերա-
գիրներ։

Խաթթուշաշ, երբեմնի այդ յոյժ բազմամարդ քաղաքը կը գտնուի
Գամրական բարձրաշխարհին մէջ, Անկիւրիոյ Արեւելքը՝ 140 քիլոմէթր
հեռու, Ալիս գետին արեւելակողմը, և անոր մեծ օժանդակ՝ Նախեաց
հեռու, Ալիս գետին արեւելակողմը, և հիմա Թուրքերու Տելիճէ-Ըրմակ (=Խելառ
Կապադովկ կամ Կապուտակ, և հիմա Թուրքերու Տելիճէ-Ըրմակ (=Խելառ
գետ) գետը Թափուող մէկ ճիւղին վրայ, Եօզղատի հիւսիս-արեւմուտ-
քը (5 ուղեւ ժամ հեռու)։ ՀԱ. 1933 էջ 534)։

Հիմա Թրքական գիւղ մըն է Պօղազքէօյ (Կապանի գիւղ) անուա-
նով։

Աւերակայրն այցելողներուն շատերն արդէն այն տպաւորութիւնն
ունեցած էին Թէ այստեղ մեծ պետութեան մը կեդրոնը եղած ըլլա-
լու էր, և կործանած արդէն կանուխէն, որովհետև յունական ազդե-
ցութեան ոևէ հետք չէր տեսնուեր։ Քովէն անցնող վտակը, քաղա-
քին աւերակները կը բաժնէ քաղաքին վրայ նայող լեռնէ մը, որոյ
ժայռերուն վրայ փորագրուած է քանդակներու նշանաւոր շարք մը։

Քաղաքը շրջապատուած է քարէ հաստկեկ պատով մը, և որոյ
մէջտեղը երկու միջնաբերդեր կան հաստատապէս կառուցեալ ապա-
ռաժէ բլուրներու երկու գագաթներուն վրայ։ Պարիսպը առանց աշ-
տարակի է և անոր ստորոտը կայ խրամ մը, մասամբ ժայռէն փոր-
ուած և մասամբ ալ գետնէն, որոյ որմերը ողորկ և հարթ քարով
պատուած են։

Քաղաքին կարեւորագոյն շինուածքը պալատ մըն է որ Արինայի
(=Իւրիւք) պալատին նման հողէ արուեստական բլրակի կամ դարա-
տափի մը վրայ կառուցուած է և զարդերը անոր նմանութեամբ գըծ-
ուած են և փորուած, բայց անկէ շատ քիչ բան մնացած է. բացի պա-
տին հիմերէն և փլփլկած քարէ գահէ մը, որ ժամանակաւ երկու
առիւծներու վրայ հաստատուած կը կենար բակին մէջտեղ։ Քաղա-
քին մեծ դրան երկու կողմի սեմերը (սէօյէ) կազմող սիւներուն վրայ
եւս առիւծի գլուխներ կային։

Պօղազքէօյի կարեւորութիւնը կը կայանայ այն քանդակներուն
վրայ որոնք մեծ խնամով փորագրուած են լերան ապառաժուտ կո-
ղերուն վրայ, և որոնք մանրամասն նկարագրած է Բրոֆ. Սէյս իր
ծանօթ գործին մէջ։ (տես էջ 55–57)։

Գալով Իւյիւքին կամ Էօյիւկի անիկա կը գտնուի Պօղազքէօյի հիւ-
սիսային-արեւելեան կողմը 4–5 ժամ հեռու անկէ և կը կարծուի ըլլալ
Արինա քաղաքը։

Հոն գտնուեցան հոյակապ պալատի մը մնացորդները։

Պալատը շինուած էր հողէ արուեստական սարահարթի մը վրայ,
նման Ասորեստանի և Բաբելոնի պալատներուն։





Պալատին ահագին խոշորութեամբ տաշուած քարերէ շինուած պատերը դեռ շատ տեղեր կանգուն են։ Պալատին մուտքին վրայ կրանիթէ երկու վիթխարի միակտուր քարեր կը գտնուին, որոնց արտաքին երեսին վրայ արտաքանդակ նկարուած են սփինքսի պատկերներ։

Արահետը որ հոն կը տանի, քանդակեալ սալաքարերէ շինուած է, որոնց վրայ կան առիւծներ, ոմանք խոյ մը պատառելու դիրքին մէջ։

Այս քաղաքին մօտերն է հիմա Եազըլըքայա (գրուած ժայռ) կոչուած քարաժայռը որ լի է Հաթեան արձանագրութիւններով։

Այս վայրը Հաթեան երբեմնի ամենագլխաւոր սրբավայրը ըլլալ կը թուի, ուր Հաթեան քուրմեր, գարնան, ամրան և աշնան, իրենց կրօնական արարողութիւններն ու անդաստանները բացօթեայ կը կատարէին հաւատացեալներու ներկայութեան, որոնք թանկագին նուէրներ, զոհեր ու համեղ կերակուրներ կը բերէին իրենց սիրելի և պատկառազդու դից (տես Բրոֆ. Նշան Մարտիրոսեան Արեւելք թ. 508 21 մարտ 1933)։

Հաթեան բնակավայրեր գտնուած են նաև Կեսարիոյ շուրջը։

Նշանաւորագոյնը անոնց՝ է Քիւլթէփէն՝ վայրը վաղեմի Կանէշին, և Գարա-Իւյիւքը՝ ուր գտնուեցաւ Կանէշի վաճառականներու դիւանը։

Ֆրանսացի Շանդրի խուզարկութիւններն են որ առաջին անգամ անոր կարեւորութիւնը երեւան հանեցին։

Նոյնպէս Հաթեան բնակավայրերու և յիշատակարաններու հնացորդներ ըլլալ կը թուին Հաթեանց նուիրական գետին՝ Ալիսի հովիտին մէջ գտնուած կարգ մը հնացորդներ, ինչպէս Թէքկէօզ կամուրջին մօտ՝ Ահմէտ Հիսար բերդը, Զօքկէօզի մօտերը՝ քարաժայռերու մէջ պեղուած տուներով գիւղի մը՝ Դալէ Քէօյի մէջ Հարսա Դալէն, Պունեանի՝ Ջէրէզէք քէօյի մօտ Միշքիրան Դալէն և Տէվէլլուի՝ Öksut Գալէն։

Դարձեալ Ալիսի եզերքը Քիլիսէ քէօյի մէջ Ջերհա Դալէն, որ 12 ժամ հեռու է Կեսարիայէն, ինչպէս նաև Հիսարճըգի մէջ կարգ մը Գալէ (=բերդ) կոչուած վայրերը, և Պունեանի մէջ ջուրերուն անցած հովիտին վրայ նայող տեղ մը քարաժայռերուն մէջ, մինչև կատարը պեղուած, մէկէն միւսը անցնուելիք կանոնաւոր սենեակները և վերջապէս Եըլանլը լեռան վրայ գտնուած բերդ մը, ամէնքն ալ ուշագրաւ և զարմանալի շինութիւններ, կը կարծուին ըլլալ Հաթեան հնացորդներ (Քէմալէտտին էջ 152-153)։

Նոյնպէս Կեսարիոյ դրացի Նիյտէյի և Պորի կողմերը Հաթեան քաղաքներու և գիւղերու աւերակներով ծածկուած են։

Կեսարիոյ և Սեբաստիոյ միջեւ գտնուող Էքրէք, Սըվըըն, Ազիզիյէ և այլ գիւղերը եւս Հաթեան կեդրոնի մը շուրջը բոլորուած էին, ինչպէս կը կարծէ Յ. Վ. Յակոբեան, թարգմանիչը Բրոֆ. Սէյսի «Քետացիք կամ մոռցուած կայսրութեան մը պատմութիւնը» գործին (տես նոյն տպ. Բարիզ 1900 էջ 3-4)։

Այս հնացորդները որոշ կերպով երեւան կը հանեն Հաթ ճարտարապետութեան առանձնայատկութիւնները, որոնք դարձեալ կը կապուին, ինչպէս իրենց ուրիշ արուեստները, մէկ կողմէն Արեւելքի և միւս կողմէն Արեւմուտքի հետ, անգամ մըն ալ հաստատելով Հաթերու

քաղաքակրթիչ դերը՝ աշխարհի մշակոյթի պատմութեան մէջ։

Պալատներու մեծագոյնները որոնք գտնուած են վերոյիշեալ աւերակներուն մէջ, գաղափար մը կուտան անոնց շինութեան արուեստին մասին։ Այդ պալատները կառուցուած են լայնքին, նման Բաբելոնի և Կրետէի շինուածներուն և ոչ թէ երկարութեան, ինչպէս են Միկէնեան շինութիւնք։ (Հմմտ. Քէմալէտտին էջ 138)։

Այս շինութիւնները առհասարակ սիւնազարդ չեն, ինչպէս Պօղազքէօյ հայլն, սակայն Ք.Ա. 2300 տարի առաջ շինուած Զինճիրլիի պալատին մէջ սիւներ գտնուած են (Նոյն)։

Հաթ և Կրետէական շինութեանց միջև ալ զգալի նմանութիւններ կը տեսնուին։

Այնպէս որ կը խորհուի թէ Հաթերը իրենց արուեստով ազդած են արեւմտեան Ասիոյ վրայ և աւելի հեռուն (Քէմալէտտին, Նոյն)։

Այս շէնքերուն գլխաւոր զարդերը կը կազմեն պատերուն և սիւներուն քանդակները, որոնք իսկապէս Հաթեան արուեստին որոշ կատարելութեան մը հասնելուն փաստերը կ'ընծայեն։

Պօղազքէօյի մէջ գտնուած դուռ մը զարդարող պատերազմի Աստուծոյ մը քանդակը Հաթեան քանդակագործութեան արժէքաւոր մէկ նմոյշն է։ (Քէմալէտտին էջ 138)։

Պալատներու ճակատները զարդարուած էին քանդակ-պատկերներով՝ Աստուածներու յաղթական դարձին զանոնք դիմաւորող արքայական ընտանիքին, երեւակայական կենդանակերպերու և այլն։

Այս ոճը՝ տիրապետող Խաթթուշաշի մէջ իր էութեան և ամբողջութեան մէջ նախատիպը եղած է Ասորեստանեան ճարտարապետութեան։ (Պրոֆ. Աճառեան, Հայ. Ա. Ն. Պատ. էջ 466 և Քէմալէտտին, էջ 140)։ Այն իրողութիւնը որ այս ժողովուրդին յատուկ է քանդակապատկերներով շէնքին ճակատը զարդարելու սովորոյթը, բաւական է, որպէսզի անոնց վերագրուի գեղարուեստական ամենազօրաւոր բնազդ, ինչպէս կ'ըսէ O. Weber (Die Kunst des Hettiter. 175)։ Հին






ՔԻՒԼԹԷՓԷՆ ՀԱՆՈՒԱԾ ԿՆՔԱԴՐՈՇՄՆԵՐ
(տես էջ 79)



Արեւելքի մէջ ոչ մի ժողովուրդ չէ ունեցած այս կարողութիւնը։

Հաթ արուեստագէտներ՝ քաղաքներու դուռներուն վրայ կը քանդակէին առիւծներ, որոնք իբր թէ քաղաքները պաշտպանելու կոչուած էին։

Մասնաւորապէս Հաթ քանդակագործութեան գլխաւոր առարկան կամ նիւթը կենդանիներն են որոնք գեղարուեստական նրբութեամբ ներկայացնել կրցած են։ Անոնց համար կենդանիները յաւիտենական և անմեռ ուժեր կը ներկայացնէին։

Հաթ արուեստագէտները միայն բնութիւնը ընդօրինակելով չեն բաւականացած այլ անոնք ստեղծագործած են անգոյ և երեւակայական արարածներ, միեւնոյն ատեն մարդ և անասուն պատկերացնող արձաններ, մարդու մարմինով և անասուններու գլուխով աստուածներ, մարդ գլուխով առիւծներ և այլ, որոնք իրական կարեւորութիւն մը ստացած են։ Անոնց նկարագիրը և կենցաղը ամբողջապէս ստեղծագործած են, որպէս թէ զանոնք աչքով տեսած ըլլային։

Իրենց շինած արձանները իրականին նմանութիւնը կը բերեն և կենդանի արտայայտութիւն ունին։

Հաթ արուեստագէտը կարծես թէ մտացածին արուեստէ աւելի տեսանելի և շօշափելի արուեստ մը ունի։

Այս տարօրինակ ու ինքնատիպ արձանները կերտող Հաթ արուեստագէտներուն կարողութիւնը՝ ներկայացնելու իրենց յատուկ նկարչական օրէնքներով, պատմութիւն մը, պատերազմ մը, որս մը, վերջապէս ժամանակի յատուկ գործ մը, արդարեւ հիացման արժանի է։ (Քէմալէտտին, էջ 140–141)։

Այս քաղաքները և յիշատակարանները որոնք կը գտնուէին Ալիս և Իրիս գետերուն (այսօրուան Գըզըլ և Եէշիլ Ըրմաք) շրջակայքը, իրենց հրաշալի աւերակներով և գեղարուեստական իրերով կը հաստատեն թէ վաղնջական այդ ժամանակներուն մէջ Ալիսի ընթացքով կազմուած ձուաձեւին գրեթէ կեդրոնը կ'ապրէր քաղաքակիրթ ժողովուրդ մը, որ ըստ Zimmererի (Kappadokien, թարգմ. Տաշեան ՀԱ. 1900 էջ 22) հաւանօրէն քուրմերու իշխանութեան տակ էր, և ունէր բարձր մշակոյթ մը, իր յատուկ գրականութեամբ և մտաւոր շարժմամբ։

Մասնաւորապէս Պօղազքէօյի մէջ կատարուած պեղումները երեւան հանեցին Հաթեան արքաներու պալատները և գրադարանը, ուր 10,000է աւելի արձանագրութիւններ գտնուեցան։

Այս սեպագիր պնակիտները, որոնց ամենահինները ԺԹ. դարուն և ամենանորերը ԺԴ. դարուն (Ք.Ա. առաջ) կը պատկանին, ո՛չ միայն հաթերէնով այլ հնագոյն Արեւելքի զանազան բնիկներու լեզուներով գրուած են։

Հաթեան պետութեան մայրաքաղաք Խաթթուշաշի արքայական դիւանը կը պարունակէր ութը տարբեր լեզուներով գրուած բեւեռագիր արձանագրութիւններ։ Այդ ութը լեզուներն էին ըստ Էմիլ Ֆօրրերի, Ա. Սումերական, Բ. Բաբելական կամ Աքքադեան, Գ. Կանէշեան, Դ. Լուվիական, Ե. Պալայական, Զ. Խուռրիական կամ Խարրիական, Է. Նախահաթեան, Ը. Մանեայական:

Անոնցմէ Սումերականը արդէն շատոնց մեռած լեզու մըն էր, այդ ալիւսները գրուած ժամանակ (ԺԵ..ԺԴ. դար Ք.Ա. առաջ) ու

միայն կ'ուսուցանէր Հաթ պետութեան դպրոցներուն մէջ, ինչպէս այսօր կ'ուսուցուի լատիներէնը։

Սումերացիք եղած են, գոնէ որչափ ծանօթ է այժմ, բեւեռագիր գործածող առաջին ժողովուրդը։

Այս լեզուով գրուած են աղօթքներ և կրօնական երգեր։

Բաբելականը կամ Աքքատականը ժամանակին դիւանագիտական լեզուն էր որով կը կատարէին միջազգային առեւտուրը կամ թղթակցութիւնները։

Ընդդէմ այդ երկու լեզուներուն կը կանգնէին միացեալ վեց լեզուները, զորս պետութեան զանազան ժողովուրդներուն կողմէ կը խօսուէին լայնագոյն մտքով։ (Ա. Սաֆրաստեան ԲՋՄԴ. 1931, էջ 430)։

«Ըստ իմ կարծիքին, կը գրէ Ֆորրէր, բնագիրներու մեծ մասը գրուած է Կանէսեան լեզուով, իսկ Խուրրիական եւ Նախահաթեան լեզուներով արձանագրուած են գրեթէ միայն աղօթքները, երգումները, ուխտերը, եւ աստուածներուն ուղղուած բոլոր աղաչանքները եւ ոգեկոչումները»։ Ֆորրէրի այս տեսութեան կը համաձայնի նաև Է. Ֆրիտրիխ (տես նոյն), յարելով թէ Լուվիական լեզուով գրուած են բացառապէս երգումները։ Խուրրիերէնը կամ Խարրիարէնը (hur-li-li կամ har-li-li) այն լեզուն էր որ կը խօսուէր Միտանիի մէջ՝ Հնդեւրոպացւոց հոն գալէն առաջ, որով պարզապէս նախ նախամիտաններէն մըն էր, ինչպէս Նախահաթերէնը կը խօսուէր բնիկներէն՝ Հնդեւրոպացի Հաթերուն Խատտուշաշ գալէն առաջ։

Այս լեզուն որ Հաթեան լեզուին հետ գոյութիւն ունէր ըստ Հռոզնիի ոչ-Հնդեւրոպական էր (ՀԱ. 1932, էջ 164) և նոյն էր Միտաններէնի՝ այսինքն այն լեզուին հետ որ Էլ-Ամառնային Փառաւոնեան Դիւանէն ծանօթացած էր։

Այս Խուրրիերէնը «միմիայն մէկ գաւառաբարբառն էր» Միտաններէնին. (ՀԱ. 1932, էջ 166), և ասով գրուած էին նոյնպէս աղօթքներ



ՀԱԹԵԱՆ ՄԵՀԵՆԱԴԻՐ
(էջ 107. պատկերին կռնակի կողմը)



և ոգեկոչումներ։ Մինչ Հաթերէնը (կամ Կաներէն և Նէսերէն) Հնդեւրոպական լեզուն էր (նոյն, էջ 166), իսկ Նախահաթերէնը՝ ha-adti-li(s) որ բոլորովին նոր լեզու մըն է Խուրրիերէնէն, Պօղազքէօյի աւերակներուն մէջ գտնուած պնակիտներու բոլոր միւս լեզուներէն չափազանց կը տարբերէր։ (Էմիլ Ֆորրէր, ՀԱ. 1932, էջ 165)։

Արձանագրութեանց մէջ կարգ մը կրօնական բնոյթ ունեցող Նախահաթերէն կամ ըստ Տոքթ. Նշան Մարտիրոսեանի Խաթիական բնագիրներ Հաթերէնի թարգմանուած ըլլալէն կը հետեւցուի թէ այս լեզուն Բ. Հազարամեակին (Քր.է առաջ) Հնդեւրոպական ծագում ունեցող Նէսերուն անհասկնալի եղած էր։

Լուվիական լեզուն՝ Հնդեւրոպական է ըստ Նորվեկացի գիտնական Կնուտզօնի։

Բալայական լեզուն — որուն մասին շատ քիչ բան գիտենք — կը թուի ըլլալ Բալացի ժողովուրդին որ բնակած է հաւանաբար ներկայ Փոքր Հայքի մէջ ուր հիմնած է Բալա քաղաքը։ (տես Արեւելք, թ. 510, 20 մարտ, 1933)։

Այս բազմալեզու դիւանին գոյութիւնը կ'ապացուցանէ թէ այս վայրը կեդրոնավայրն էր տիրապետուած զանազան ազգերու և ժողովուրդներու որոնք ամէնքն ալ «Հաթ» անունով կը ճանչցուէին թէև, սակայն ազգութեամբ և լեզուաւ իրարմէ կը տարբերէին։

Հետեւաբար Խաստուսաս այս անհետացած կայսրութեան պատմութիւնը ուսումնասիրող գիտուններու կողմէ, կը նկատուի մայրաքաղաքը այս լայնածաւալ պետութեան, որուն մէջ ընթացիկ գործածութեան մէջ էին ութը լեզուներ, մեծ մասամբ կենդանի, և կ'ապրէին անժխտելիօրէն ցեղապէս գոնէ իրարմէ բոլորովին տարբեր երկու ազգութիւններ։

Ասոնք ամէնը ձուլուեցան և միակ անունով մը — Հաթեան — ճանչցուեցան, սակայն ինչպէս առհասարակ ամէն մեծ ցեղ,, այս ցեղին պատկանող բոլոր ժողովուրդները միեւնոյն լեզուն չէին խօսեր, այլ կը գործածէին նոյնիսկ կարելի է իրարու անհասկնալի լեզուներ, ինչպէս են օրինակ արիական կամ սեմական լեզուները։ (Հմմտ. Լէօ, Հայոց Պատմութիւն, էջ 211)։

Սակայն անուրանալի է որ հոն Արգէոսի ստորոտը կատարուեցաւ մեծ ցեղախառնում մը, և կերտուեցաւ վաղեմի, պատկառելի քաղաքակրթութիւն մը, որ աննախընթաց էր աշխարհի պատմութեան մէջ։

Այդ քաղաքակրթութիւնը շատ բան ժառանգած էր Նախահաթերէն՝ այսինքն Մերձաւոր Արեւելքի նախաբնիկներու ցեղակից ժողովուրդէն, որ ինչպէս տեսնուեցաւ աշխարհի առաջին քաղաքակիրթ ժողովուրդներէն մին էր և ունէր փառաւոր մշակոյթ մը, որ փոխանցեց Ի. դարուն (Քր.է առաջ) իր երկիրը արշաւող և տիրապետող Հնդեւրոպական Նէս-Հաթերուն։

Եւ ինչպէս S. Przewoscki ըսած էր իրաւամբ «Կեդրոնական Անատոլուն իւրացնող Հաթերը պէտք է մասամբ նմանագործէին այն բնիկներուն, որոնք իրենք ցած բարձրաւանդակին յատուկ կեանքով»:

Արդարեւ Նէս-Հաթեանք նմանագործեցին Նախահաթերը և գրեթէ շարունակեցին անոնց կեանքը և կենցաղը, և իւրացուցին անոնց կրօնական հաւատալիքներուն մեծ մասը, ինչպէս նաեւ արուեստները

և արհեստները, անշուշտ ճոխացնելով և զարգացնելով նոր տարրերով և նոր ներշնչումներով։

Լայնածաւալ Հաթեան կայսրութեան մէջ տարածուած էր ինչպէս հնագոյն Փոքր Ասիոյ ուրիշ կողմերը բազմաստուածեան պաշտամունքը և ինչպէս կ'երեւայ մինչև 1000 աստուածներ գոյութիւն ունէին (Տօքթ. Նշան Մարտիրոսեան, Արեւելք, Թ. 508), որոնց բոլորին «Նախամայր» համարուող «Երկրի Դիցուհի»ին պաշտամունքը ամէնէն շատ տարածուածն էր ամբողջ Մոտաւոր Արեւելքի, Նամանաւանդ ծովէ ծով երկարող Հաթ կայսրութեան մէջ։ (Նոյն)։

Սումերական Իշտարի (=Աստղիկ) և հայկական Անահիտի «Ոսկեմօր» համապատասխանող այս դիցուհիին զաւակն ալ բուսականութեան Աստուածն էր, որուն գալուստը, գարնան, Հաթերը մեծ շքեղութեամբ կը տօնէին և աներեւութանալը կ'ողբային ու կը սգային։

Հաթեան Միթոսին պատկանող միւս աստուածութիւնները և անոնց պաշտամունքը յետոյ փոխանցուած և պահպանուած է Փոքր Ասիական զանազան ազգերու մէջ, որոնք հետեւորդները եղած են հնագոյն քաղաքակրթութեան ստեղծիչ այս ազգին։

Անոնք նաեւ ստեղծած են արուեստներ, համապատասխան իրենց ֆիզիքական կոշտ կազմին և հաստատուն նկարագրին։

Իրենց պատկերագրերը Հաթեան նկարչական գեղարուեստին գոհարները կրնան նկատուիլ (Տօքթ. Ն. Մարտիրոսեան Արեւելք Թ. 509)։ Կենդանիներու և մարդերու արձաններ, զանազան քանդակներ ինքնուրոյն արուեստի մը ոճը երեւան կը հանեն, յատուկ Ալիսի գետահովիտի մէջ ապրող ընդհանուր անունով Հաթ կոչուած ցեղերու, որոնք ինչպէս տեսնուեցաւ, գոնէ երկու խաւ ունէին իրենց մէջ, մին՝ Խաթի=Նախահաթերը և միւսը՝ Հաթերը։

Չափազանց դժուար է ուրեմն Նախահաթեան և Հաթեան քաղաքակրթութեանց միջնասահմանը ճշդել և որոշել թէ ի՞նչ բան կը պատկանի Խաթի Նախաբնիկներուն և ի՛նչ բան՝ Հաթ եկուորներուն։

Ասով հանդերձ կարգ մը Հնդեւրոպական ցեղերու յատուկ առանձնայատկութեանց յայտնաբերումը անժխտելի կը դարձնեն Նախաբնիկներու մշակոյթին պատուաստումը Հնդեւրոպական մշակոյթով և նոր բարքերու ներմուծումը դէպի՝ Փոքր Ասիա։

Առանց անոր շատ մը կէտեր անմեկնելի պիտի մնային։

Այս Հնդեւրոպական տարրերու յատուկ զբաղումներէն մին է ձիաբուծութիւնը որուն այնքան մեծ կարեւորութիւն կուտային Հաթերը։

Արդարեւ անոնք մեծ ձիաբոյծներ էին և իրապէս շատ կարեւոր իրողութիւն մըն է թէ հնագոյն ձիաբուծական կամ ձիամարզական գրուածքը գտնուած է Պօղազ քէօյի դիւանին մէջ։

Այս գործին հեղինակն էր Կիկկուլի Միտանացի, որ ըստ Հրոզնիի կ'ապրէր Քր.է առաջ ԺԴ. դարուն Շուպպիլուլիումաշ արքային ժամանակ (1395–1353) և ախոռապետն էր Արիական իշխանական տան որ նոյն ժամանակ կը տիրէր Միտանիի մէջ։

Իր երկը որ առաջնորդող ձեռնարկ մը պիտի ըլլար Հաթեան ձիամարզիչներուն համար, բաժնուած էր երեք մասի։ Առաջինը կը խօսէր ձի մարզելու նախապատրաստութեան, երկրորդը՝ վազքի մարզանքի և երրորդը՝ քառատրոփի մարզման մասին։

Ձիերու մարզանքին ամբողջ տեւողութիւնը որքան որ արձանա-



գրութեամբ պահուած է՝ 184 օր էր։ Ասոր հետ կենդանիին ամէն մէկ քայլը, խուրաքանչիւր հանգիստի միջոցը, ամէն անգամ կեր տալը և խարի բաղադրութիւնը, ջրելը և ամէն մէկ անգամի լոգանքը որոշ նախատեսուած են։ (տես. Հայաստանի Սեպ. Ծրչ. Պատմութիւն, էջ 547)։

Այս գրութիւնը բաղկացած էր չորս տախտակներէ, հինգերորդը կորսուած ըլլալով։ Այս գրութիւնը մօտ 900 տող է (Նոյն)։ Գրուած է Հաթերէն բայց հնդիկ-արիական ասութիւններով խառնուած, գլխաւորաբար մասնագիտական արտայայտութեանց համար։ Այնպէս որ որոշ է թէ այս գրուածը կը պատկանի շրջանի մը ուր Հնդեւրոպական տարրեր արդէն մտած էին Փոքր Ասիա և իրենց հետ բերած էին ձիաբուծական ծանօթութիւններ, վասնզի որոշ է թէ Հնդեւրոպացիք արդէն իրենց մայր-հայրենեաց մէջ ձիաբոյծեր էին և վէճի տակ չէ դարձեալ թէ իրենց այրուձին էր այն գլխաւոր զէնքը՝ որով տիրեցին Լուվեր-Հաթեր և Արիք և այլն՝ Փոքր Ասիոյ և միւս երկիրներուն (Տաշեան, ՀԱ. 1931 էջ 635)։

Բեւեռագրական և մեհենագրական բովանդակ հին մատենագրութեանց մէջ եզական է այս գրուածքը որ յօրինուած է Փոքր Ասիոյ տիրող Հնդեւրոպական տարրին կողմանէ և անոր կազմակերպած ձիամարզարանին համար, ուր կը կատարուէին ձիարշաւներ։ Անշուշտ բանակի կամ այրուձիի պէտքերուն համար էր այս ամէնը, որ կ'ենթադրէ ձիաբուծութեան մեծ զարգացում մը։ Ձիաբուծութիւնն ի հարկէ շարունակուած է այնուհետև, գոնէ տեղ տեղ, նոյնիսկ երբ Հաթեան մեծ պետութիւնն այլեւս գոյութիւն չունէր, այլ մնացած էին միայն մանր պետութիւններ, և երեւան եկած էին ինչպէս հնդեւրոպական նոր դաղթականութիւններ, նոյնպէս առհասարակ նոր ազգեր։ Վերջապէս այս ձիաբուծութեան արդիւնքն է անշուշտ, երբ նաև յետոյ կը լսենք Տեգարամայի համար թէ «Եւ ի տանէ Թորգոմայ՝ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո» (Եզեկ. Իէ. 14), այսինքն՝ Տիւրոսի։ (ՀԱ. 1931, էջ 635)։

Արդարև Կապադովկիա յաջորդ տարիներուն ալ նշանաւոր ձիաբուծութեան կայան մը մնաց։

Հաթերը՝ հոն ներմուծեցին ուրեմն Հնդեւրոպեանց յատուկ գործ մը։

Ասոր պէս ուրիշ օրինակներ ալ կարելի է գտնալ։

Սակայն միշտ ապրեցան Նախահաթեան բնիկ մշակոյթը, քաղաքակրթութիւնը, արուեստները և արհեստները, բարքերը և սովորոյթները, նոր կատարելագործութիւններով և ճոխացումներով։

Նէս-Հաթերը իրենք ալ իրենց կարգին հիմնեցին քաղաքներ։

Ասոնցմէ առաջինն էր Ի. դարուն, իրենց ներխուժումէն անմիջապէս յետոյ հիմնած Նէսաս կամ Նէշաշ քաղաքը որ երբեմն իրենց մայրաքաղաքը եղաւ։

Անոնք վերաշինեցին Խաթթուշաշը — Նախահաթեանց մայրաքաղաքը որ իրենք կործանած էին — և զայն յետոյ դարձուցին իրենց մայրաքաղաքը։

Հոն գտնուեցաւ իրենց դիւանը որ ինչպէս ըսինք, աշխարհի պատմութեան բերաւ մեծ նպաստ և լուսաբանեց ո՛չ միայն Մերձաւոր Արեւելքի անցեալը այլ մարդկութեան սեփականութիւնը ըրաւ Հաթեան կայսրութեան պատմութիւնը որ բոլորովին կորսուած էր։

Այս յիշատակարանները պերճախօսօրէն կը հաստատեն թէ այդ

ժողովուրդը յարաբերութեան մէջ էր Եգիպտոսի, Բաբելոնի և Վերին Ասորւոց աշխարհին Հաթերուն հետ։

Սակայն քաղաքակրթական այն աշխատանքը որ Արգէոսի շուրջը և Ալիսի եզերքները կը կատարուէր այնքան տոկուն ու կենսունակ ժողովուրդի մը կողմէ, ընդհատուեցաւ ԺԲ. դարուն (Քս.Է առաջ) և Հաթեանք եթէ ոչ իբր ցեղ գէթ իբր պետութիւն վանուեցան դէպի Եփրատի եզերքը և արեւմուտքէն արշաւող ժողովուրդներ քարուքանդ ըրին Հաթեանց ստեղծագործ աշխատանքը Արգէոսի շրջանակին մէջ,

## Գ.

## ԱՍՊԱՏԱԿՈՒԹԵԱՆՑ ՇՐՋԱՆ ՄԻՆՉԵՒ ԿԻՒՐՈՍ

## (1200 — 546 Քրիստոսէ առաջ)

Այս ընդհանուր խառնաշփոթութեան միջոցին (ԺԲ. դար Քս.Է առաջ) ուր ազգեր ազգերու վրայ կ'իյնան և իրարու կը խառնուին և ծնունդ կուտան նոր նոր ազգերու և ժողովուրդներու, Կապադովկիոյ պատմութիւնը կ'ընդհատուի և չենք գիտեր թէ հոն ինչեր կը պատահին «ծովաժողովուրդներու» արշաւանքին առեն։

«Ծովաժողովուրդներու» գաղթականութեամբ Նախաասիոյ մշակոյթի ազ-
«դեցութեան սահմանը մէկ հարուածով՝ Ասիական կամ առնուազն Եգէական
«ծովէն ետ մղուեցաւ Եփրատին ու հիւսիսային Տիգրիսի վրայ: Ասով Փոքր Ասիոյ
«համար կը վերջանար՝ Նախաասիոյ մշակոյթին ընծայուած 1500 ամեայ ժամա-
«նակամիջոց մը: Եփրատը կը դառնար «բարբարոս» Եւրոպայի արեւելեան
«սահմանը»։ (Ֆորրեր)։

Հետեւաբար կը լռէր պատմութիւնը այլեւս արձանագրել Եփրատէն արեւմուտք պատահած դէպքերը, որոնք արդարև այլեւս չէին պատկաներ քաղաքակիրթ ու կազմակերպեալ պետութեան մը կեանքին այլ թափառիկ ու վայրի ժողովուրդներու որոնք տակաւին տեղաւորուած ալ չէին և տեղէ տեղ կը շարժէին։

Չորս դարերու անյայտութենէ մը յետոյ Քրիստոսէ առաջ Ը. դարուն վերջերը իբր տիրող ազգեր հարաւային և արեւելեան Կապադովկիոյ մէջ՝ կը գտնենք Մոսքեր և Տիբարենացիք Սև Ծովու ափունքը՝ Կողքիսացիք, Խաղդիք, Քալիւբայցիք (=Chalyber) և Կաւկոնացիք։ (Zimmerer, Kappadokian ՀԱ. 1900 էջ 22 և Տաշեան, Ուսումն. Դասական Հայ Լեզուի էջ 236)։

Նոյն ժամանակամիջոցին (Ը. և Է. դար Քս.Է առաջ), Խրիմէն Կիմմերացիք (= հայերէն Գամիրք) և Սկիւթացիներ կամ Շակեր Հայաստանի ճամբով կը թափին դէպի հարաւ և արեւմուտք։

Կիմմերացիները երկար թափառումներէ վերջ, կը հաստատուին Կապադովկիոյ և Կիլիկիոյ մէջ, երբ Փռիւգ-Թրակեան ժողովուրդներ հազիւ հասած էին Փոքր Հայք։

Այսպէս ուրեմն Կապադովկիոյ ինչպէս բովանդակ Փոքր Ասիոյ մէջ. ԺԲ. դարէն մինչև Է. դար Քս.Է առաջ կը տիրէր խառնակութիւն մը, որ կը պատճառէին Վոսփորէն Փոքր Ասիա խուժող Հնդեւրոպական ցեղերը և Արեւելքէն եկող Կիմմերեանք։



Կապադովկիոյ մէջ տիրող ազգերէն մէկը եղող Մոսքերու մասին գէթ կարելի է որոշապէս ըսել թէ անոնք արդարև այն ժողովուրդներէն մին են որ երեւան կուգան Փռիւգ-Թրակեան ժողովուրդներու մեծ շարժումէն յետոյ։

ԺԲ. դարուն սկիզբը ազգերու նոր գաղթականութեան առեն պատահած վերիվայրութեանց շրջանին Փոքր Հայք մտած են Մուսքինները (Muskiներ) որոնց անունին նմանութիւնը աչքի առջև ունենալով, կարելի է հետեւցնել թէ պիտի ըլլան նոյնինքն Մոսքերը։ Թերեւս անոնք հիւսիսէն եկած ըլլան, ուր Տիբարինացւոց քով կը նստէին և որոնք ըստ կարգ մը գիտուններու կարծիքին գաղթած ըլլալու են դէպի Արեւելք և իրենց անունը տուած այն լեռներուն՝ որոնք «Մոսքական» կամ ինչպէս Վիրք կը գրեն «Մեսխական» լեռներ կոչուեցան (Տաշեան, ՀԱ. 1931 էջ 59)։

Լեման-Հաուպտ՝ Մոսքերը կը համարէ Փռիւգներու մէկ մասը, որոնք շուրջ 1200ին ըստ Ֆորրէրի (Հայ. Սեպ. Շրջ. Պատմ, էջ 244) կը յարձակին Փոքր Ասիա և կ'առաջանան մինչև Տիգրիսի ակնաղբիւրի շրջանը։ Ըստ Ե. Մեյերի, անոնք կ'ապրէին Պոնտական լեռնաստանին մէջ և Հաթեան պետութեան անկումէն յետոյ տարածուեցան Արեւելեան Փոքր Ասիոյ մէջ։ (Բրոֆ. Ա. Խաչատրեան Հայ. Սեպ. Շրջ. Պատմ. էջ 235)։

«Հաթ պետութեան կործանումէն յետոյ անոր արեւելեան կողմը առաջ եկած պետութիւններու շարքին, Մուշքի պետութիւնը՝ մօտաւորապէս վերջը՝ Կապադովկիա կոչուած երկրին մէջ՝ Ալիսի և վերին Տիգրիսի միջև երկար ժամանակ մը կարեւոր դեր է խաղացած» (Բիլաբիլ):

Ըստ Սմիթի «ԺԱ. դարուն վերջին քառորդին մօտեր նոր ժողովուրդ մը ի գործ դնելով իր մարտական զօրութիւնը տեւակ մը գերիշխանութիւն ձեռք բերաւ Եփրատէն դէպի Արեւելք: Անոնք էին Մուշկիները (= Մուշքի)՝ «սարսափը», որ տակաւին կը մտաբերուէր Եզեկիէլի օրերուն: Այս ժողովուրդը, որուն գլխաւոր բնակավայրը կը գտնուէր Կիլիկեան դուռներէն դէպի հիւսիս, 50 տարի կերպով մը կառավարեց Տաւրոսի և Անդիտաւրոսի ժողովուրդները հեռու մինչև Վանայ լիճը»։

Մոսքերը 1170ին (ըստ Լեման-Հաուպտի 1166ին Քս.Է առաջ) գրաւեցին Ալզի (=Ալշէ=Աղձնիք) ու Պուրուկուզզի տէրութիւնները՝ Եփրատի արեւելեան կողմը։ (Ե. Մէյեր և Բիլաբիլ) և յետոյ ետ մղուեցան մինչև Հայաստան Կուրի ակնաղբիւրները, (Լեման-Հաուպտ) և կամ նոյն ուղղութեամբ իջան դէպի հարաւ և մտան Կադմուխի — Նիզիպինի շրջանը։ Անոնց արշաւուղին դէպի այդ կողմ պէտք է կատարուած ըլլայ հիւսիս-արեւմտեան կողմէն։ (Բրոֆ. Խաչատրեան Նոյն էջ 245)։

Անոնք վերջապէս մտան Հաթերու երկիրը և հոն տեղաւորուեցան։ Այնպէս որ Ասորեստանեան արձանագրութիւնները այլեւս ըսկսան յիշել Մոսքերը, իբր հիւսիսի թշնամիներ։

Ինչպէս Հաթերը իւրացուցեր էին Սումեր-Ակկատեան կամ Բաբելոնեան քաղաքակրթութիւնը, Մոսքերն ալ Հաթեան մշակոյթը իւրացուցին և զայն նմանագործեցին։

Անոնք փորձեցին իրենց երբեմնի աւելի բարձր նախորդներուն՝ Հաթեան քաղաքականութիւնը ընդգրկել (Բիլաբիլ)։

«Անտարակոյս ան կեդրոնական կառավարութիւն մը չէր ներկայացներ

այլ պետութիւններու միութիւն մը, դաշնակցութիւն մը, որ այսունանդերձ կարող էր 20,000 մարդ հանել պատերազմի դաշտը» (Բիլաբիլ):

Անոնք գործ ունեցան, ինչպէս արձանագրութիւններ ցոյց կուտան, Ասորեստանի պետութեան հետ որ այս միջոցին դէպի արեւմուտք կը հասնէր Եփրատ և դէպի հիւսիս-արեւելք՝ Հայկական Տաւրոսի ջրաբաշխ կատարները:

Տեգլաթպիլեսար Ա. (ըստ Մէյերի՝ 1115–1100, ըստ Բիլաբիլի 1130) առաջին հնագոյն տեղեկութիւնը կուտայ Մուշքերու մասին:

Անիկա կ'ըսէ. «Թագաւորութեանս սկիզբը 20,000 Մուշքացի մարդիկ եւ իրենց թագաւորներէն 5-ը, որոնք 50 տարի տիրած էին Ալզիին ու Պուրուկուզզիին, որոնք հարկ ու տուրք կը բերէին իմ տիրոջս Աշշուրին եւ զորոնք բնաւ թագաւոր մը նկուն չէր ըրած, իրենց զօրութեան վստահացան, իջան վար եւ Կումմուխի (կարդալ Կադմուխի) տիրեցին: Ի ծառայութեան Աշշուրի իմ տիրոջս՝ պատերազմի կառքերս ու զօրքս ժողվեցի ապագայ ժամանակի չսպասեցի (?) Կաշիյարա երկիրը դժուարագնաց տեղ մը կտրեցի անցայ. անոնց 20.000 զօրքի եւ 5 թագաւորներու հետ Կումմուխի (=Կադմուխի) մէջ պատերազմեցայ եւ անոնց յաղթեցի: Իրենց զօրքի դիակները փոթորիկի մը պէս ուժգին յարձակմամբ երկիր կործանեցի, անոնց արիւնը ձորձորներու մէջ եւ լեռներու բարձունքներու վրայ վազել տուի, անոնց գլուխները կտրեցի եւ զանոնք իրենց քաղաքներու քովերը կուրուր պէս սփռեցի: Անոնց աւարը, բոլոր ինչքն ու ստացուածքները մեծ քանակութեամբ առի տարի. 6000 անձինք անոնց զօրքի մնացորդները, որոնք զէնքիս երեսէն փախած էին եւ ոտքերուս փարեցան, ինծի հետ մէկտեղ առի տարի եւ զանոնք իմ երկրիս բնակիչներուն կարգը դասեցի»:

Այս ժողովուրդը սակայն չդադրեցաւ մշտակայ սպառնալիք մը ըլլալ Ասորեստանի համար, որուն արձանագրութիւններուն մէջ դարձեալ կը պատահինք անոնց յիշատակութեան աւելի ուշ ժամանակներու:

Այսպէս Տուկուլտի-Նինուռտա Բ. (889–884) կը յիշէ Մուշքիններու երկիրը, բայց Տիգրիսէն հարաւ, (Բրոֆ. Խաչատրեան Հայ. Սեպ. Տրց. Պաս, էջ 236):

Սարգոն (722–705) կը յիշէ դարձեալ Մուշքերը և անոնց Միտա թագաւորը, (տես, նոյն էջ 237), բայց իր տուած տեղեկութիւններէն կարելի չէ որոշել անոնց գրաւած աշխարհամասը: Միայն գիտելի է որ միշտ կը յիշուին իրենց դրացի ու յաճախ դաշնակից Կարկամիշի, Կասկայի (Հաթերու Գաշ-գաշ=Փոքր Հայք), Հիլակկուի կամ Խիլակուի (=Կիլիկիա՝ Մաժակ քաղաքին շուրջ), Ուրարտուի (=Այրարատ) ու Թաբալի հետ:

Լեման-Հաուպտ, Վինքլեր, Հոմմել և ուրիշներ կ'ընդունին թէ Սարգոնի յիշած Մոշերու թագաւոր Միտան՝ այն անձն է Հերոտոսի յիշած Փռիւգիոյ թագաւոր Միտասի հետ, որ Ը. դարուն վերջը հիմնեց Փռիւգիոյ պետութիւնը:

Հետեւաբար անոնց բուն երկիրն ու կեդրոնը կը հանդիսանար յոյներու ծանօթ Փռիւգիան(1) (Բրոֆ. Խաչատրեան, Հայ. Սեպ. Տրց. Պաս. էջ 245): կամ աւելի ճիշդ բացատրութեամբ մը «կարող ենք Մուշքերը իրենց գրաւած երկրամասերուն համեմատ բաժնել արեւմտեան եւ արեւելեան կամ այսր Եփրատեան՝ Եփրատի արեւելքէն Ծոփքի եւ Աղձնիքի վրայով մինչեւ Վանայ լիճը եւ Փռիւգիոյ Մուշքերը, որոնց դէմ երկար ժամանակ պայքարեցաւ Սարգոն» (Բրոֆ. Ա. Խաչատրեան նոյն էջ 239):

Անոնք դեռ կարեւոր ոյժ մը կը ներկայացնէին և իրենց դրացիներուն հետ զինակցելով՝ շատ կ'զբաղեցնէին Ասորեստանի մեծ աշխարհակալը, իսկ անկէ առաջ ալ Հայաստանի սահմանը ներխուժած Հաթերու հետ միասին Ուրարտուի թագաւորները (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 238):

Ասոնք իբր Փռիւգ-Արմէններ Փոքր Հայքէն մտան Հայաստան (Բրոֆ. Խաչատրեան նոյն էջ 245): Հաւանական է, որ Ուրարտուի թագաւոր Ռուսա Բ.ի (685–675) մղած պատերազմը Մուշկաեաններու դէմ՝ իր պետութեան արեւմտեան սահմանին վրայ այս Մուշքերուն դէմ էր, որոնք արդէն սկսած էին առաջանալ դէպի Արմէնիայի ներսը (նոյն էջ 245):

Մուշքերը Եզեկիէլի ժամանակ (592–570) դեռ կարեւոր ոյժ մը կը ներկայացնէին, ըստ Ս. Գրոց (Ծննդ. Ժ. 2 Եզկ. ԻԷ. 13 ԼԸ 2-6) և Եհովան անոնցմով կ'սպառնար Տիւրոսին:

Կիմմերներու վերահաս յարձակումը Ուրարտուի պետութեան սահմաններուն վրայ, ա՛լ աւելի մղում տուաւ Մուշքերուն ու շատ դիւրացուց անոնց մուտքը Հայաստան, (նոյն) որուն հարաւակողմը բնակող Մուշ-Մուշկիներու անունով ունինք Մոկք և Մուշ(ք) տեղական անունները և թերեւս նաև Մուշեղ անձնանունը (նոյն):

Աւելի ուշ անոնք աւելի հիւսիս առաջացած ըլլալ կը թուին, վասնզի Ստրաբոն (Ծն. 63 Քր.է առաջ) գիտէ Մուշքերը հաստատուած Կողքիսի սահմանակից Փասիս (=Ռիոն) գետի վերին հոսանքին վրայ:

Մոշեան լեռները Կարին-Վանանդի մէջ կը բաժնեն Մոշերու երկիրը Արմէններէն:

Միհրդատ Մեծի ու Տիգրան Մեծի ժամանակ Մուշքերը կը բաժնուէին իրենց սահմանակից երեք պետութիւններու՝ Կողքիսի, Իբերիայի և Հայաստանի միջև:

Մուշքերու վերջին բնակավայրը իրենց անունով կը կոչուէր Մուշքետի, Մասքետք:

Մուշքերը եղած են յաջողակ վաճառականներ և Տիւրոսի վաճառանոցը կը տանէին պղնձէ անօթներ և ստրուկներ:

Այս ժողովրդախումբը, որ ինչպէս տեսնուեցաւ որոշ շրջան մը Կապադովկիոյ տէրն ու տիրականը դարձած էր, բացի իր մէջ ունեցած տոհմերու յատուկ շատ անուններէն, ունէր երկու ընդհանուրին վերաբերեալ անուն: Արեւմտեան ժողովուրդներուն ծանօթ էր Փռիւգ անունով, որ Յոյները կուտային անոնց՝ հիմնուած Թրակիոյ Բռիկ անունին վրայ, իսկ Արեւելեան ազգերը նոյն ժողովուրդը կը ճանչնային իր բուն ցեղային Մուշ-Մուշք անունով:

---

(1) Մուշքերու Փռիւգներու հետ նոյնը ըլլալուն ինպաստ Խաչատրեան (Նոյն էջ 245–246) կը ներկայացնէ հետեւեալ պատմական տուեալները, 1. աշխարհագրական նոյնութիւնը կը հաստատէ թէ Մուշքերու բնակավայրը նոյն Փիւռիգիան է, 2. պատմութիւնը կ'ընդունի թէ Մուշքերու Միտա թագաւորը նոյն անձն է Փիւռգ պետութեան հիմնադիր Միտասի հետ: ժամանակագրութիւնը միանգամայն կը հաստատէ այս նոյնացումը:

*Ասորեստանցիները և Եփրայեցիները այսպէս կը կոչէին այս ժողովուրդը, որ մէկուն համար «անընկճելի» եղած է իսկ միւսին համար՝ «սարսափ»* (Հայ, Սեպ. Շրջ. Պատմ. *էջ* 246)։

*Քէմալէտտին իր գործին մէջ (էջ 222) կարծիք կը յայտնէ թէ Կեսարիոյ շրջանակին մէջ Արգէոսի շուրջ գտնուած Պէօյիւք և Քիւչիւք Մուշքէր կոչուած վայրերուն անունները Մուշքերուն անունէն առնուած են։*

*Այս հեղինակը որ չի նոյնացներ Մուշքերը Փռիւգիացիներուն հետ, առանց ըսելու թէ Կեսարիոյ շրջանակը Մուշքերէն անցած է Փռիւգիացւոց, կ'ըսէ թէ Մաժակ եղած է Փռիւգեան կարեւոր քաղաքներէն մին (Քէմալէտտին էջ 222)։*

*Իր տեսութեամբ Փռիւգիացիք Ը. դարուն (Քր.է առաջ) իրենց սահմանները դէպի Արեւելք ընդարձակած և Կոմանա, Մաժակ, Տիանա քաղաքները Փռիւգեան կեդրոնավայրներ դարձուցած են։*

*Փռիւգեան շինութեանց մնացորդներ գտնուած են Կեսարիոյ մօտը Էսկի Շէհիրի աւերակներուն մէջ (նոյն էջ 223), ինչպէս նաև հոն խիստ դժուարին և աչքէ հեռու գաղտնի վայրի մը մէջ, դէմ դէմի երեք քարաժայռերու վրայ գրութիւններ փորագրուած են։*

*Այս ժայռերուն տակը նախապէս կը կարծուի թէ գերեզման մըն էր և գիրերն ալ Փռիւգեան։*

*Մասնաւորապէս Փռիւգեան մնացորդներ շատ կը գտնուին Բունար Պաշը գաղային մօտ Շար-Կոմանայի մէջ* (Քէմալէտտին *էջ* 223)։



Փռիւգեան արձանագրութիւն մը

*Մուշքեան ցեղին տոհմերուն յատուկ անուններու շարքին մէջ պէ՟տք է դասել թէ իրր անջատ ժողովուրդներ ընդունիլ անունները մի քանի ուրիշ ժողովուրդներու, որոնք կը յիշատակուի. թէ ապրած են Կապադովկիոյ մէջ այս ժամանակամիջոցին, խնդիր մըն է լուծման կարօտ։*

*Այսպէս կը յիշուի թէ Ալիսի հարաւակողմը տեղաւորուած էին Բագատաւոնացիք* (Bagadaoner) *և Կատաւոնացիք* (Kataoner), *որոնք մինչեւ Եկեղեաց գաւառը կը տարածուէին (Ստրաբոն ԺԲ. ԺԳ. 5) և որ յետոյ Արմէններէն քշուեցան* (Zimmerer)։

*Հերոդոտոս (Ե. դար Քր.է առաջ), որ ժամանակով շատ մօտ է, կը հաստատէ թէ Կիւրոսի օրով (553–525) վերին Ալիսի վրայ, Նախնագոյն Կիլիկիայէն(1) դէպի հիւսիս կը բնակէին Մատիենները և հեռու աւելի հիւսիս՝ Ալիսի եզերքն կը բնակէին Կապադովկիացիները՝ որոնք այս գետով կը բաժնուէին Պափլագոնացիներէն (Հմմտ.* Justin Prasek. Geschichte des Meder und Perser bis sur makedonischen Erobirung. I. 1906 *էջ* 149 *և Բրոֆ. Խաչատրեան* Հայաստանի Սեպ. Շրջ. Պատմ. *էջ* 207)։

*Հերոդոտոս նոյնպէս կ'ըսէ թէ* «Ալիս գետը կը բխի Արմենիայի լեռներէն ու նախ կ'անցնի Կիլիկեան երկրէն, ապա կը ձգէ իր աջ կողմը Մատիեններ եւ ձախ կողմը Փռիւգներ, անցնելով, այս երկիրներէն՝ գետը կը դառնայ դէպի հիւսիս»:

*Ըստ Բրոֆ. Խաչատրեանի տեսութեան այս Մատիենները ուրիշ ժողովուրդ մը չէին, եթէ ոչ Արի-Միտանիները կամ Մեդերը որոնք շատ հին դարերուն ունեցած էին ընդարձակ կայսրութիւն մը որ Ալիսէն մինչեւ Կուր, Ուրմիոյ լիճը ու Կենտրոն (Դիալա) գետը կը տարածուէր (Ըէյնախ)։*

*Այս կայսրութիւնը խորտակուած էր աւելի ռազմիկ ժողովուրդներու արշաւանքով և կործանած կայսրութեան բեկորները քշուած էին հաւանօրէն իրենց հին բնակավայրին ծայրերը ըստ Ըէյնախի և կամ անոր լեռնային մասերը ըստ բրօֆ. Խաչատրեանի (նոյն էջ* 209–210) *կամ կարելի է մտածել թէ նոյն ժողովուրդը Մարաց տիրապետութեան շրջանին, նոր՝ բայց ոչ օտար դրօշի մը տակ ձեռնարկած է երկրակալութեանց և Մարաստանի լեռնաստանէն Հայաստանի ճամբով տարածուած է մինչեւ Մելիդինէ, Կապադովկիա և Բագատաոն, անտարակոյս շատ մեծ չափով նպաստելով Մարաց զէնքին յաջողութեան, և տանելով զանոնք մինչեւ Ալիս գետի արեւմուտքը, ուր անոնք գտան իրենց արժանի ախոյեան Լիւդացիները (տես վարը)։*

*Ալիսի Մատիենները՝ հաւանական բեկորները Արի=Խարրի-Միտանիներու, վերջին անգամ կը յիշուին Տիգրանակերտի Հայ արքային յունարէն արձանագրութեան մէջ (նոյն էջ* 210) *իսկ այնուհետեւ ուրիշ ո՛չ մէկ տեղ։*

*Ասոնք ալ ինչպէս իրենց արեւելեան ազգակիցները ձուլուած են շրջակայ բնիկ և նորեկ ժողովուրդներու հետ (նոյն էջ* 210) *բայց ընդհանուր ձուլումը երկար ժամանակ առած է, վասնզի Հերոդոտոսէն չորս դար յետոյ ապրող աշխարհագիր մը՝ Ստրաբոն, որ Քր.է դար մը առաջ կ'ապրէր, տակաւին իր ժամանակը, կը յիշէ թէ Կապադովկիոյ մէջ կ'ապրէին այլազան ժողովուրդներ։*

*Ստրաբոն, որուն խօսքերուն մասնաւոր կերպով պէտք է հաւատք ընծայել երբ խնդիրը Կապադովկիոյ վրայ է, քանի որ այս բազմահմուտ աշխարհագիրը բնիկ Կապադովկիացի էր ծնած ըլլալով Ամասիա, մեզի կուտայ թանկագին տեղեկութիւններ իր բնիկ երկրին բնակչութեան մասին։*

*Անիկա կ'ըսէ թէ* «Կապադովկիացիք, նախապէս երկու ուրոյն ազգեր էին թէ՛ ցեղով եւ թէ՛ լեզուով: Նախնիք Ասիոյ այս մասին ազգերը բուած ասեն՝ Կապադովկիացիներէն յետոյ կը դնեն Կատայոնացիները եւ Կատայոնացիներէն յետոյ յայնկոյս Եփրատի ժողովուրդները(1), թէպէտեւ ո եւ է խտիր չենք տեսներ այսօր, ո՛չ բարքերուն եւ ո՛չ ալ լեզուին մէջ Կատայոնացւոց եւ Կապադովկիոյ այլ բնակչաց միջեւ: Սակայն ստոյգ է թէ Կատայոնք առանձին ազգ էին, մինչեւ Արիարաթ, որ առաջին թագաւոր եղաւ Կապադովկացւոց՝ եւ որ բռնի իր իշխանութեան ենթարկեց զանոնք»:

*Եւ ինչպէս Կապադովկիացի աշխարհագիրին մէկ ուրիշ վկայութենէն կը հասկցուի, այս ցեղերը տարածուած էին մինչեւ Եկեղեաց նա-*

---

(1) *«Նախնագոյն» կոչուած Կիլիկիոյ գլխաւոր քաղաքն էր Մազակա=Մաժակ=Կեսարիա, ըստ Ստրաբոնի։*

(1) *Այս ժողովուրդները կրնան համարուիլ Խաղդիացիները, Մուշքերը, Տիբարենացիները և մանաւանդ Հերոդոտոսի յիշած՝ վերոգրեալ Մատիենները։*

հանգը, մինչեւ Կարին եւ Դերջան, վասնզի նոյնինքն Ստրաբոն, ժամանակով այնքան մերձաւոր, կը վկայէ թէ Հայոց Արտաքսիաս եւ Զարիադրէս թագաւորները, որ հազիւ հարիւր տարի առաջ կ'ապրէին իրմէ, «Գրաւեցին Խաղդիներէն եւ Մոսինիքներէն (Մոսք) Կարինը եւ Դերջանը եւ Կատայոնացիներէն՝ Եկեղեացը եւ Անտիտաւրոսի ամէն կողմերը, գաւառներ, որ այս միութեան պատճառով կը խօսին հիմա միեւնոյն լեզուն» (Ստրաբոն ԺԱ. 14.5)։

Այս չափազանց թանկագին տեղեկութիւնները կը հաստատեն թէ Կապադովկիոյ մէջ կ'ապրէին արդարեւ զանազան ցեղեր որոնք անձուկ մտքով Կապադովկիոյ մէջ ալ չէին սահմանափակուեր եւ տարածուած էին Փռիւգիայէն մինչեւ Հայկական բարձրաւանդակին սիրտը։

Ստրաբոն տակաւին մինչեւ իր ժամանակները, Կապադովկիա անունով կը ճանչնար ամբողջ Հայաստանի արեւմտեան սահմանակից երկիրը, երկիր ընդարձակ որ իբրեւ երկար պարանոց մը Իսոսի (Կիլիկիա) ծոցէն կը տարածուէր մինչեւ հարաւային արեւելեան ծայրը Եւքսինեան Պոնտոսի (Սեւ ծովու) եւ կը բաժնէր Փոքր Ասիոյ թերակղզին բուն մեծ Ասիայէն։

Ը. դարուն (Քր.է առաջ) Փոքր Ասիոյ պարանոցին մէջ տիրապետող դարձած եւ դեռ իրենց ինքնուրոյն նկարագիրը պահող այս ազգերը, մասնաւորապէս Մուշքերը եւ Տիբարինացիները, յաճախ կռիւի մէջ էին այս ժամանակամիջոցին արդէն Արեւելքի մէջ հզօր պետութիւն մը դարձած Ասորեստանի իշխողներուն, մասնաւորապէս Սարգոնեանց հետ, որոնք ի վերջոյ յաջողեցան կերպով մը իրենց գերիշխանութեան ենթարկել այս ազգերը (Zimmerer), բայց ոչ մէկ պատճառ կայ ընդունելու որ մինչեւ Ալիսէն անդին, մինչեւ Սեւ Ծովու եզերքն խորամուխ եղած ըլլան։ Թէեւ անուրանալի իրողութիւն մըն է թէ գրեթէ ամբողջ Ասիա, Արեւելքէն մինչեւ Ինտոս, հարաւէն մինչեւ Պարսից ծոց, արեւմուտքէն մինչեւ Միջերկրական եւ Սեւ ծովերը եւ Փոքր Ասիա, եւ հիւսիսէն՝ մինչեւ Կուր կամ Կասպից ծով՝ չմնաց ազգ կամ երկիր, որ չի զգար Ասորեստանի զինուց զօրութիւնը։ (Հմմտ. Ա. Մ. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1895 Ա. հատոր, էջ 28)։

Մասնաւորապէս Ասուր-աքէ-իդինի (681–667) իշխանութեան շրջանին կը թուի թէ Ասորեստան թոյլ ըլլայ ժամանակաւորապէս, հասած է մինչեւ Սեւ Ծովու հիւսիսային արեւելեան եզերքը, մինչեւ Կովկաս, եւ ունեցած անօրինակ ընդարձակութիւն մը։ (Ա. Մ. Գարագաշեան, նոյն, Ա. հտ. էջ 29)

Իր որդին եւ յաջորդը Ասուր-բան-աբալ (667) ո՛չ միայն պահած է իր հօրմէն նուաճեալ երկիրները, այլ նաեւ Լիւդացւոց թագաւորը՝ Գիւգէսը (Gygès) հպատակեցնելով գէթ անուանապէս տիրած է բովանդակ Փոքր Ասիոյ եւ այսպէս Ասորեստանի թագաւորութիւնը հասած մինչեւ Եգէական, (Սմիթ, Պատմ. Ասուրբանիբալայ էջ 84–99. Ա. Մ. Գարագաշեան, նոյն, Ա. հտ. էջ 29)։

Այս յաջողութիւնը Ասուր-բան-աբալ կը պարտէր Կիմմերեան բարբարոսներու արշաւանքին, վասնզի Գիւգէս, Լիւդիոյ թագաւորը, իր օգնութիւնը խնդրած էր ընդդէմ Կիմմերներու եւ այս առթիւ էր որ իր յարգանքը յայտնած Ասորեստանեայց արքային, (665 Քր.է առաջ) որ այսպէս իր ազդեցութիւնը տարածած է մինչեւ Փոքր Ասիոյ յունական ստացուածքները։



Սակայն այս տիրապետութիւնը շատ կարճ տեւեց վասնզի հիւսիսէն եւ հարաւէն սկսաւ գրոհ մը որ պիտի տապալէր Ասորեստանեանց պետութիւնը՝ որ թէպէտեւ հսկայ արտաքուստ՝ խարխուլ եւ անհաստատ էր ներքուստ։ Առաջին գրոհը Ասորեստանի վրայ տուին Մարերը, որոնք նոյնիսկ յաջողեցան անոնց մայրաքաղաքը Նինուէն պաշարել։

Տակաւին չէին յաջողած զայն գրաւել երբ երկրորդ զարհուրելի տագնապ մը ծայր տուաւ։

Այս մեծ գրոհը որ Կապադովկիոյ պատմութեան համար ալ իր մեծ նշանակութիւնը ունէր, Կիմմէրներու արշաւանքն էր։

Ասիոյ եւ Եւրոպիոյ հիւսիսային կողմը կը թուի թէ այդ շրջանին (634–627) շարժում մը պատահած է ժողովուրդներու տեղափոխութեան։ Հերոդոտոս կը պատմէ թէ Մասկութք հալածեցին Սկիւթացիքը, որ Եւրոպա մտան եւ հաստատուեցան Կիմմերներու երկիրը (Միջին Ռուսիա)։

Կիմմերները՝ փախստական Սկիւթացւոց առջեւէն կը մտնեն Կովկասի ճամբով Ասիա։ Սկիւթացիք անոնց կը հետեւին։

Կիմմերները եւ Սկիւթացիք երկար տարիներ, աւեր եւ կործանում սփռեցին Արեւմտեան Ասիոյ մէջ, թագաւորներ հարկատու ըրին, եւ գրաւեցին ամէն առթիւ եւ ամէն տեղի մէջ ինչ որ իրենց օգտակար կը թուէր։

Անոնք դէպի հարաւ առաջացան մինչեւ Նինուէ։

Իրենց մտեցած ատեն, Մարք վերցուցին Նինուէի պաշարումը, ապաստանելու համար լեռները։

Եգիպտոսի թագաւորը՝ Փսամետիքոս մեծագումար փրկանքով ազատեց իր երկիրը աւարառութենէ։

Նինուէի թագաւորը Մարաց ձգեց այս աւարառուները հալածելու գործը։ Այս թագաւորը որ յիշատակարանները կը կոչեն Assour-edil-ilâni եւ զայն կը թարգմանեն Սատակ կամ Քինալատան, թողուց որ Նապոբալասար, իր Բաբելոնի տեղակալը, անզգալաբար իր իշխանութենէն հանէ Ասորեստանի հպատակ ժողովուրդները, դաշնակցի Սկիւթացւոց եւ յետոյ Մարաց եւ պատրաստէ իր տէրութեան կործանումը։

Այս քայքայումը որուն կ'ենթարկուէր Ասորեստանեայց Մեծ պետութիւնը, կ'ոգեւորէր Փոքր Ասիոյ նուաճուած ժողովուրդները։

Մասնաւորապէս Լիւդացիք որոնք քիչ առաջ ստիպուած էին ճանչնալ Ասորեստանի գերիշխանութիւնը, թօթափեցին այդ լուծը։

Կիաքսար Ա. (638–595) նուաճելէ յետոյ պարսիկները եւ յայնկոյս Տիգրիսի այլ արիական ցեղերը, արշաւեց Փոքր Ասիա, իրեն հպատակեցնելու համար Լիւդիոյ Ալիատտէս թագաւորը (625–555)։

Վեցամեայ պատերազմէ մը յետոյ, օր մը ըստ Հերոդոտոսի, իրարու դէմ ճակատ մղած ատենենին՝ արեւը կը խաւարի։ Այս չարագուշակ երեւոյթը պատճառ կ'ըլլայ որ երկու պետութիւնները հաշտութիւն կնքեն (610 Քր.է առաջ)։

Ալիս գետը երկու ազգերու սահմանը եղաւ։ (Գարագաշեան, Քննական Պատմ., Ա. հտ. էջ 50–51)։

Ասորեստանի պետութեան քայքայումէն Լիւդիացիներէն զատ օգտուած ըլլալ կը թուին նաեւ պատմութեան ասպարէզ նոր եկող եւ

Ալիս գետին շուրջը, Փոքր Ասիոյ պարանոցին վրայ բնակող զանազան փոքր ժողովուրդները, ինչպէս Մոսքերը, Տիբարինացիք, Բագատաւոնացիք, Կատաւոնացիք եւ այլն որոնք ապահովաբար կը խլրտին ձեռք բերելու համար իրենց անկախութիւնը, սակայն չուտով կ'ընկճուին և կ'ստիպուին հնազանդիլ Մար-Պարսից Մեծ պետութեան։

Այս շրջանին կը կարծուի թէ Կապադովկիոյ մէջ ծնունդ կ'առնեն բնիկ իշխանութիւններ, որոնց պետերը այդ նոր պզտիկ ժողովուրդներուն ցեղապետներն էին, որոնք գուցէ կը քաջալերուէին Լիւդիացւոց կողմէ որոնք կը ձգտէին մրցակից հանդիսանալ Մետացւոց՝ Փոքր Ասիոյ տիրապետութեան համար։

Այս փոքր ժողովուրդներուն մէջ ամէնէն յաջողակն ըլլալ կը թուին Կիլիկեցիք, որոնք Տաւրոսէն անցած կ'իշխէին մինչև Ալիս (Zimmerer), որ ըստ Հերոդոտոսի (Ա. 72) կը հոսէր Կիլիկիոյ մէջ կամ Կիլիկիան կը բաժնէր Կապադովկիայէն (Հերոդոտոս Ե. 52), և Մաժակ (Μαζσάξα) տակաւին մայրաքաղաքն էր Կիլիկիոյ ըստ Ստրաբոնի (ԺԲ. 1. 4)։

Արդ, Ալիսի արեւմտեան կողմը գտնուող բոլոր ազգերը ենթարկըւած էին Լիւդիացւոց, իսկ արեւելակողմը գտնուողները՝ Մետացւոց (=Մարաց) գերիշխանութեանը, քանի որ երկու ասիական մեծ պետութեանց սահմանն էր Ալիս գետը։

Լիւդիացիք և Մետացիք Ասիական ժողովուրդներու համար չափազանց բարերար դեր մը կատարած են, վասնզի պատուար հանդիսացած են բարբարոսական արշաւանքներու, որոնք կրնային Ասիոյ ճակատագիրը յեղաշրջել։

Այսպէս Լիւդիացիք էին որ վերջ տուին Կիմմերացւոց հին ու նոր ասպատակութիւններուն և Միտացիք՝ Սկիւթացւոց տիրապետութեան (տես Zimmerer, Kappadokien, ՀԱ. 1900 էջ 22–23)։

Լիւդիացիք չթողուցին որ Կիմմերները անցնին Ալիսը և զանոնք հարկադրեցին հաստատուիլ Կապադովկիոյ մէջ, վերջ տալով իրենց ասպատակային անվերջ արշաւանքներուն, իսկ Մարաց Կիաքսար Ա. թագաւորն էր որ կրցաւ ազատել Ասիան բարբարոսներու պատուհասէն։

Թագաւորն և իր ժողովուրդը ընդարձակ դաւադրութիւն մը կազմեցին։ Սկիւթացւոց մեծագոյն մասը ճաշի հրաւիրեցին և զանոնք բռնելով սպաննեցին։

Կիաքսար (638–595) ազատուած Սկիւթացիներէն, վերստին ձեռնարկեց Ասորեստանի մայրաքաղաքին պաշարումին Նաբոպալասար՝ Բաբելոնի իշխանին հետ միասին, և յաջողեցաւ կործանել Նինուէն որուն վերջին թագաւորը՝ Assour-edil-ilâni (Սարակ = Քինալատան) իր պալատը կրակի տուաւ և ինքզինքն բոցերուն մէջ նետելով մահացուց (606 Քր.է առաջ)։

Նինուէի կործանումէն յետոյ, Մարք և Բաբելացիք իրենց միջև բաժնեցին Ասորեստանի տէրութիւնը։

Մարք կ'առնեն Հայաստանը և Կապադովկիան և Ալիս գետը սահման կը դարձնեն։

Ասորեստանի կործանումէն օգտուելով Փռիւգիա ինքզինքն անկախ հռչակեց, սակայն Կիաքսար զանոնք վերստին նուաճեց և հպատակեցուց, և սկսաւ սպառնալ Լիւդիոյ։ Պայքարը անխուսափելի էր

Փոքր Ասիոյ տիրապետութեան ձգտող այս երկու պետութեանց միջեւ։
Արդարեւ Մարք եւ Լիւդացիք պատերազմի բռնուեցան։
Նապոբոլասար Բաբելոնի թագաւորը (625–604) որ հիաքսարի դաշնակից էր Մարաց օգնեց նաեւ ընդդէմ Լիւդացւոց։ Բայց երբ տեսաւ որ Եգիպտացիք Սուրիա կ'առաջանան, անոնց դէմ ղրկեց իր որդին՝ Նաբուգոդոնոսորը որ տարի մը յետոյ իրեն յաջորդեց։
Նաբուգոդոնոսոր (604–561) Կարկամիշի մօտ սարսափելի ընդհարում մը ունեցաւ եւ Սուրիայէն վանեց Եգիպտացիքը եւ չարաչար պատժեց նուաճուած Հրեաները։
Մարք մինակ շարունակեցին պայքարը Լիւդիոյ դէմ։ Պայքարը տակաւին վերջնական արդիւնքի մը հասած չէր երբ Պարսկաստանի մէջ 670էն (Քր.Է առաջ) իվեր տիրող Աքեմենեաններէն (Nouveau Dict. d'Hist. et de Geogr. Anc. et Mod. etc· par M. M. Ed. d'Ault-Dumesnil, Louis Dubeaux et l'Abbé A. Crampon 1874) սերող արքայական հարստութեան պատկանող Պարսիկ Կիւրոս (553–525) տիրեց Մարաստանի եւ իբր ժառանգորդ նոյն պետութեան ինքն հակառակորդ կանգնեցաւ Լիւդացւոց որոնց Ályat թագաւորը իր պետութեան սահմանները մինչեւ Ալիս ընդարձակած էր։ (Քէմալէտտին էջ 225)։
Իր որդին Կրեսոս, Լիւդիոյ առասպելական հարստութեան տէր թագաւորը, աւելի ընդարձակեց իր պետութիւնը եւ մինչեւ Սեւ Ծովու եզերքները շատ մը վայրեր գրաւեց։
Կրեսոս տեսնելով որ Լիւդիոյ համար վտանգ կ'սպառնայ Կիւրոս, անոր դէմ Բաբելոնի եւ Եգիպտոսի գործակցութիւնը ապահովելու միտքով գաղտնի համաձայնութիւն մը ստեղծելու համար բանակցութիւններ կատարեց եւ պատրաստութիւններ տեսաւ՝ Ալիսէն անդին դէպի Արեւելք արշաւելու համար։ Ան նախ իրեն դաշնակից դարձուց 559ին Փռիւգիոյ Արտամիս իշխանը,
Գրաւեց Պտերիան, Կապադովկեան երկրին «ամրագոյն» վայրը(1) եւ դրացի քաղաքները։ (Հերոդոտոս, Ա. 66 եւ ՀԱ. 1933 էջ 534)։
Այսպէս Ալիսի արեւելեան եզերքն որ նախապէս պարսիկ գերիշխանութեան տակ կը գտնուէր Լիւդիոյ տիրապետութեան ենթարկուեցաւ Կրեսոսի ժամանակ (546 Քր.Է առաջ), որ իր իշխանութեան ենթարկած էր արդէն Փոքր Ասիոյ մեծագոյն մասը։
Ճիշդ այս միջոցին է որ Կիւրոսի բանակը Բաղդէստանի ճամբով Կապադովկիա մտաւ։
Կրեսոս դիմաւորելու համար Պարսիկ բանակը Կապադովկիոյ մէջ անցաւ Ալիս գետը եւ ինքն ալ իր կարգին մտաւ Կապադովկիա (546)։
Կրեսոս աւերեց «Ասորւոց կալուածները» կամ հիներու «Սպիտակ Ասորիքը» (Փր. Leucosyrie, գերմ. Leukosyrien որ կը համապատաս-

(1) Պտերիայի տեղը կը կարծուի ըլլալ Կիւկիճէս ցաղ (Եօզղատի արեւելեան հարաւ)։ 1926ին միեւնոյն ժամանակ զատ զայն Ֆօրրէր եւ Օստէն եւ պեղումներ կատարեցին։ Հսկայ քաղաք մը եղած է։ Օստէն 1927ին չափած է ամուր պարիսպներուն շրջապատը՝ իբր 6 ուկէս քիլոմէթր։ Այս հսկայ տարածութեամբ քաղաքը հզօր կեդրոններէն մին էր կեդրոնական Փոքր Ասիոյ, մինչեւ իր կործանումը։ Հռոմէական եւ Բիւզանդեան շրջանին ալ, հոն քաղաք մը կար՝ բայց աննշան։ (Տաշեան, ՀԱ. 1933 էջ 536)։

*խանէր եթէ ոչ բովանդակ Կապադովկիոյ գէթ անոր մէկ մասին)։*

*Այս պատերազմին՝ որ պատգամին վճիռին համեմատ մեծ պետութիւն մը պիտի կործանէր, ելքն ամէնուն ծանօթ է։*

*Քանի մը ամիս յետոյ Կրեսոս յաղթուած էր և գետին ինկած, Լիւդիոյ մայրաքաղաքը Սարտիկէ գրաւուած և Լիւդիան ջնջուած էր տէրութիւններու շարքէն, և ամբողջ Ասիա միացած էր Կիւրոսի* (558–529) *գաւազանին տակ* (546 *Քր.է առաջ*) (*Հմմտ.* Zimmerer, ՀԱ. 1900 *էջ* 33)։

*Կրեսոսի երեք տարուան մէջ պատրաստած բանակին մէկ քանի օրուան մէջ անէացումը Մար-Պարսիկ պետութիւնը գերիշխան ոյժը դարձուց Արեւելքի։ Կեսարիան այսպէս անցաւ պարսիկ տիրապետութեան* (*Քէմալէտտին, էջ* 225)։

*Այս մօտաւորապէս հարիւր տարուան ժամանակամիջոցին մէջ որ բովանդակ Ասիան վերիվայրումներու ենթարկուած և ազգերու մեծ տեղափոխութիւնները տեղի ունեցած են, ի վերջոյ Պարսիկ կազմակերպեալ պետութեան միօրինակ վարչութեան ենթարկելու համար գրեթէ բովանդակ Մերձաւոր Ասիան, Կապադովկիոյ բնակչութիւնը կրած է նոր կերպարանափոխութիւն մը։ Բոլոր այն ժողովուրդները որ Հաթերու կործանումէն յետոյ հոն կ'ապրէին, ինչպէս Փռիւգ-Մուշքերը, Բագատաւոնացիք, Կատաւոնացիք*(1), *Մատիեններ, Տիբարինացիները եւայլն, ոմանք բնիկ և այլք նորեկ, տեղի տուին Կիմմերացիներուն որոնք եկան հաստատուեցան հոն և իրենց մէջ ձուլելով դարերու ընթացքին տեղւոյն բնիկ ու նորեկ ժողովուրդները, ծնունդ տուին նոր ժողովուրդի մը որ Կապադովկիացի կոչուեցաւ։ Ըստ Տաշեանի տեսութեան* (Թէ ինչպէ՞ս կազմուեցաւ Հայ ազգը ըստ տեսութեան Հ. Յ. Տաշեանի, ՀԱ. 1934 *էջ* 28–31) *Գամիրք* (*Կիմմերացիք*) *անցնելով Կովկասը և Արեւելեան Հայաստանը իջած են իրան, ուրկէ յետոյ միայն անցած են Կեդրոնական և Հարաւային Հայաստանի վրայէն դէպի Փոքր Հայք և Գամիրք* (=*Կապադովկիա*)։ (ՀԱ. 1934 *էջ* 28)։

*Հնդեւրոպական Հայերու Հայաստան մուտքը կը կարծուի թէ պատահած է Կիմմերեան և Սկիւթական հին ու նոր ասպատակութեանց պատճառով, որ աւերի և ապականութեան մատնած էր բոլոր Փոքր Ասիան և Հայաստանը, խորտակած էր Ասորեստանի զօրութիւնը՝ մինչև Մարաց զօրանալը և բռնադատած է թերեւս ազգերը փոխել իրենց բնակավայրերը՝ ուր կը մնային։* (*Հ. Յակոբոս Վ. Տաշեան*, Ուսումն Դասական Հայերէն Լեզուի, *Վիեննա*, 1920, *էջ* 18)։

*Մէյէր կ'ըսէ թէ աւկէ վերջը կը տեսնենք Ուրարտացւոց հզօր պետութիւնը անհետ կորսուած, Մուշքերը և Տիբարինացիները վտարուած հիւսիս դէպի Պոնտոսի ծովեզերքը, իսկ անոնց տեղը առաջին անգամ կ'երեւի «Գամիրք» անունը։* (Ուսումն Դասական Հայերէն Լեզուի, *էջ* 19)։

---

(1) *Կատաւոնացի կամ Կատաոնացի բառին ծագումը Բրօֆ. Խաչատրեան կը կարծէ տեսնել Կատ=Խատ=Խաթի բառին մէջ և զանոնք կը համարէ այսպէս մնացորդները Հաթերուն որոնք քշուած էին իրենց նախկին բնավայրէն դէպի Արեւելք անշուշտ Արեւմուտքէն եկող ժողովուրդներու ճնշման տակ։* (Հայ. Սեպ. Տրց. Պատմ. *էջ* 247)։



*Ալարոտեանք տակաւին բոլորովին անհետ չեն եղած, բայց անոնց հետ նստած կը գտնենք նաև Արմէնները Եփրատի վերի բազուկին և Տիգրիսի աղբերակունքին վրայ* (*Նոյն, էջ* 19)։

*Արմէնները իրենց անունը կուտան երկրին և քիչ յետոյ աշխարհի ամէն կողմերը կը դառնան համալեզու, այսինքն համաբարբառ, ինչպէս կը հաւաստէ Ստրաբոն։*

*Իսկ Կապադովկիոյ տիրող խաւը կը դառնան Գամիրք, առանց բոլորովին բնաջնջած ըլլալու երկրին նախկին բնակչութիւնը ինչպէս շատ որոշ կը հաստատուի Ստրաբոնի խօսքերէն, որ տակաւին իր ժամանա՛կը՝ Քր.է Ա. դար առաջ, գիտէ անոնց գոյութիւնը։*

*Հոն Արգէոսի շուրջը՝ պարսիկ կազմակերպուած պետութեան վարչութեան տակ, կը կատարուէր քաղաքակրթական նոր աշխատանք մը և ցեղերու ու ազգերու նոր ձուլում մը, համանման հնագոյն ժամանակներու մէջ կատարուածին։*

## Դ.

## ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ՊԱՐՍԻԿ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**(546 - 322 Քրիստոսէ առաջ)**

*Կիւրոսի յաղթութեան հետեւանքներէն մէկը եղաւ նաեւ Փոքր Ասիոյ կեդրոնավայրին պարսիկներէն գրաւումը։*

*Կապադովկիա, այդ կեդրոնավայրին սիրտը, դարձեալ կառավարուեցաւ ըստ աւանդութեան, նախապէս հոն հաստատուած բնիկ իշխանական ընտանիքէն, որ կերպով մը կատարեց Պարսից Արքայից Արքային սատրապներուն դերը և այսպէս երկիրը ապրեցաւ աւատապետական ազնուականութեան մը իշխանութեան տակ։* (Nouveau Dict. d'Hist. et de Geogr. Anc. et Mod. etc. par M. M. Ed. d'Ault-Dumesnil, Louis Dubeaux et l'Abbé A. Crampon, 1874)։

*Սակայն քանի մը մատենագիրներու այն տեղեկութիւնը թէ Պարսից իշխանութեան ներքեւ ալ Կապադովկիան կամ Պոնտական պետութիւն մը շարունակած էր գոյութիւն ունենալ կամ կեանք առած էր, լոկ կամայական առասպել կը համարէ Թէոտոր Րէյնախ* (*տես* ՀԱ. 1900 *էջ* 38)։ *Իր տեսութեամբ թագաւորներու այն ցանկերը՝ ուր կը վխտան հակասութիւններ և անկարելիութիւններ, յետոյ միայն յօրինուած են Արիարաթեանց և Միհրդատեանց պաշտօնական պատմագիրներէն՝ անոնց հարստութեան ի նպաստ,* (*տես* Zimmerer, ՀԱ. 1900 *էջ* 33)։

*Իրականութեան մէջ Դարեհ Վշտասպեանի* (521–485) *պետութեան մէկ նահանգին* (*սատրապութեան*) *վերածուած էին, իրարու միանալով, Սպիտակ Ասորիք, Մատիենացիք, Փռիւգացիք, Մարիանդինացիք և Բիւթանացիք։ Հերոդոտոս այս նահանգը սատրապութեանց իբր երրորդը կը յիշէր և որուն մայրաքաղաքն էր Դասկիլիոն Պրոպոնտեայ։*

*Կ'երեւայ թէ դար մը տեւած է այս վիճակը։*

*Հերոդոտոսի և Քսենոփոնի մէջտեղ եղած ժամանակը՝ այս շատ մեծ ու շատ աննման տարրերու բնակավայր սատրապետութիւնը*

բաժնուած էր երեք շրջանի՝ Հելլեսպոնտեան Փռիւգիա, Մեծ Փռիւգիա և Բուն Կապադովկիա։ Այս վերջինը ասկէ յետոյ կը գրաւէր բացի Իրիսի շրջակայ երկիրէն՝ բոլոր միւս երկիրները մինչեւ Տաւրոս՝ որ «Նախնագոյն» Կիլիկիայէ բաժնուելով առնուած էր։ (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 33)։

Այս շրջանին է որ Կապադովկիա աշխարհագրական կոչումը, որ հաւանօրէն պարսիկները տուած էին երկրին —ինչպէս Հերոդոտոս ալ կը հաստատէր — երեւան կուգայ և գործածելի կը դառնայ։ (տես էջ 44)։

Պարսկական տիրապետութեան շրջանին կամ անկէ քիչ յետոյ ապրող ժամանակագիրներ չեն տար ոեւէ փաստ որմէ կարելի ըլլայ եզրակացնել թէ Կապադովկիա կազմուած էր երկու նահանգներէ, բայց Ստրաբոն կը հաւաստէ թէ Պարսիկները զայն բաժնած էին երկու սատրապութիւններու Մեծն Կապադովկիա և Պոնտական Կապադովկիա անուններով (Ստրաբոն, Գիրք ԺԲ. էջ 534)։ Ստրաբոնի յիշատակութենէն զատ Կապադովկիա միացեալ Լիկաւոնիայի յիշուած է իբր սատրապութիւն Քսենոփոնէ (Գիրք Է. գլ. 8) և Դիոդորոս Սիկիլիացիէ (Գիրք ԺԴ. գլուխ 5)։ (Հմմտ. Asie Mineure. depuis les temps les plus anciens jusqu'à la bataille d'Ancyre. en 1402, par M. Ph. Le Bas, Paris. 1865, էջ 64-65)։

Քսենոփոնի «Նահանջ Բիւրոց»ին ժամանակ (400 – 401) երկու Կապադովկեաները կը կառավարուէին իբր թէ Միհրդատէն, որուն Արիոբարզան որդին Փռիւգիոյ սատրապն էր իր հօրը ողջութեան և անոր մահէն յետոյ ստացաւ ամբողջ երկիրները որ անոր ենթարկուած էին (Նոյն, էջ 68)։

Անկէ յետոյ է որ կը յիշատակուին Կապադովկիոյ բնիկ արքայական ընտանիքին պատկանող թագաւորները, որոնք իրարու յաջորդած են իբր թէ, սակայն Պարսից իշխանութեան տակ ապրող այս թագաւորները բացի Դիոդորոս Սիկիլիացիէն ուրիշ ոեւէ պատմագիր չի յիշեր, վասնզի Քսենոփոնի «Կիւրամարզը» կարելի չէ իբր պատմական գրութիւն մը համարել և իր աւանդածը իբր իրողութիւն ընդունիլ։ Հետեւաբար կասկածով պէտք է նայիլ այս ցանկին վրայ, ինչպէս կասկածով ընդունիլ՝ Ստրաբոնի այն վկայութիւնը թէ Կապադովկիան Պարսից տիրապետութեան տակ իսկ երկու մասի բաժնուած էր։

Րէյնախ կը համարի թէ Կապադովկիոյ յիշեալ բաժանումը Ստրաբոնին գիտական մէկ կարծիքն է լոկ, որպէսզի կրկին թագաւորութեանց ծագումը կարենայ մեկնել։ (ՀԱ. 1900 էջ 34)։

Բրոֆ. Մարկուարտ կ'ըսէ թէ «Ստրաբոնի բառը թէ Կապադովկիան երկու սատրապութեան բաժնած էին Պարսիկները, ընդունելի է այնչափ՝ որ ուշ ժամանակի Կապադովկիան բաղադրուած էր «Կապադովկիա» նահանգին եւ Կիլիկիոյ թագաւորութեան մասերէն»: (ՀԱ. 1900 էջ 231)։

Միայն ներելի է ենթադրել թէ Պարսիկ կայսրութեան վերջին Թագաւորներու ժամանակ Կապադովկիա թերեւս բաժնուած էր երկու սատրապութեանց կամ կուսակալութեանց, մէկը բաղկացած կեդրոնական և ներքին մասէն, որուն Կապադովկիա անունը շարունակուեցաւ տրուիլ յոյն աշխարհագիրներու կողմէ, մինչ միւսը կոչուեցաւ κατὰ Πόντον (Գաթա Պոնտոս) կամ պարզապէս Պոնտոս։

Այս բաժանումը արդէն կատարուած պէտք էր ըլլար Քսենոփոնէն



առաջ (տես Բրիտանական Համայնագիտարան), վասնզի ինչպէս իր խօսքերէն կը հասկցուի անոր Փոքր Ասիան ճեղքած ատենը, (400-401) այլեւս Կապադովկեան նահանգը մինչեւ Սեւ Ծով չէր հասներ, ինչպէս երբեմն։

Արտաշէս Բ. Ուշեղի (Artaxerxes Mnémon) իշխանութեան (404–358) ժամանակ Կապադովկիոյ սատրապն էր իր եղբայրը՝ Կիւրոս որ ապստամբեցաւ եղբօրը դէմ՝ իր մօր Պարիսատիսի թելադրութեամբ և առաջացաւ մինչեւ Բաբելոն, յոյն վարձկան զօրքերով, որոնց հրամանատարն էր Քսենոփոն։

Սակայն Կիւրոս պարտուեցաւ (401) Կունաքսայի ճակատամարտին մէջ և մեռաւ։ (Քսենոփոն Արշաւանք Կիւրոսի Դ. դպ. Դ. գլ. և Գարագաշեան ՔՆՆ. Պատ. Ա. էջ 67)։

Այս պատճառով նոր պատերազմ մը ծագեցաւ Պարսից և Յունաց մէջ և Պարսից պետութիւնը մեծ տագնապի մատնուեցաւ (396–394), վասնզի Սպարտացիներուն Ագեսիղաւոս թագաւորը անցնելով Ասիա, հարուածեց Պարսիկները և յառաջացաւ մինչեւ Կապադովկիա (395 Քր.է առաջ)։

Ագեսիղաւոս թագաւորը թերեւս 70 տարի առաջ պիտի յաջողէր ընել ինչ որ Ալեքսանդր Մակեդոնացի ըրաւ յետոյ, եթէ Յոյները կաշառուելով Պարսիկներէն Յունաստանի մէջ չկազմէին դաշնակցութիւն մը ընդդէմ Սպարտայի և չստիպէին Ագեսիղաւոսը դառնալ իր հայրենիքը դարձեալ Փոքր Ասիան և Կիպրոս կղզին ձգելով Պարսից (387) (Հմմտ. Գարագաշեան ՔՆՆ, Պատմ. Ա. էջ 74 Asie Mineure էջ 151)։

Պարսից տիրապետութիւնը Կապադովկիոյ վրայ դարձեալ հաստատուեցաւ ճարտար և կորովի Դատամէս Սատրապին (362) ձեռքով։

Իսկ թէ երկիրը պարսից տիրապետութեան ենթարկուած ատեն պահա՞ծ է նաեւ իր բնիկ իշխողները, հարց մըն է որ կրնայ կասկածի տակ ձգուիլ։

Պարսիկները երբ Փոքր Ասիոյ տիրեցին, շատ տեղերու մէջ պահեցին հին արքայական տուներէն սերած թագաւորները, ինչպէս նաև թող տուին որ բնիկները պահեն իրենց լեզուն, կրօնքը, օրէնքները և սովորութիւնները։ Երկու հպատակ պետութիւններ կարող էին մինչեւ իսկ իրարու դէմ պատերազմիլ, առանց Արքայից Արքային միջամտութեան առիթ տալու։

Հետեւաբար կարգ մը թագաւորութիւններ պահեցին իրենց կազմակերպութիւնը ճիշդ այնպէս ինչպէս որ էր պարսից գրաւումէն առաջ, երեք պայմաններով.

Ա. Պարտաւոր էին տուրք վճարել

Բ. Պատերազմի ատեն պարտաւոր էին օգնել Պարսից

Գ. Թագաւորները պարտաւոր էին ժամանակ առ ժամանակ այցելութիւն տալ Արքայից Արքային։

Արդ, այս տեսութեամբ կարգ մը հեղինակներ կը կարծեն թէ Կապադովկիոյ բնիկ թագաւորները պահած են իրենց իշխանութիւնը, իսկ ուրիշներ կը կարծեն թէ պարսից արքաներուն տիրապետութենէն յետոյ Կապադովկիոյ մէջ հաստատուած է Սատրապ մը՝ Աքեմենեանց ցեղէն (տես Vaillant. Historia Achœmenidarum նաև Asie Mineure էջ 67) որուն սերունդները յետոյ ժառանգականօրէն իշխած են երկրին և տեղացի դարձած են։

Կապադովկիոյ թագաւորներուն Պարսիկ իշխաններու սերունդ ըլ-

լալը կը հաստատէ Պոլիբիոս պատմագիրը (Դարագաշեան ՔՑՑ. Պատմ. Բ. էջ 102) որ ժամանակով ամէնէն մօտ և ստուգաբան ժամանակագիրը կրնայ նկատուիլ։ Հետեւաբար իր խօսքը պէտք է մեզի համար մասնաւոր կշիռ մը ունենայ։

Ինչ ալ ըլլայ ծագումը այն ընտանիքին որ կը կառավարէր Կապադովկիան՝ Պարսից տիրապետութեան շրջանին, որոշ է թէ անոնք թագաւոր տիտղոսը առած էին և անտարակոյս Դարեհ Ա.ի կազմակերպութենէն սկսեալ, բազմաթիւ սահմանակից Սատրապներ իրենց իշխանութեան տակ միացուցած էին (Asie Mineure էջ 67)։

Դժբաղդաբար Պարսիկ տիրապետութեան շրջանին Կապադովկիոյ մասին ընդարձակ տեղեկութիւններ և ծանօթութիւններ չկան, որպէսզի կարելի ըլլայ լուծել այս առեղծուածը։

Բուխհոլց (Adolf Buchholz. Die Liste der Kappadokischen Könige bei Diodor) կ'ըսէ թէ երբ Պարսիկները Կրեսոսի հարուստ և հզօր երկիրը՝ Լիւդիան գրաւեցին, առանց բաժանման իբր միակ Սատրապութիւն մը թողուցին սատրապի մը ձեռքը։ Երբ Լիւդիոյ մէջ այդպէս վարուեցան Կապադովկիոյ պէս խեղճ երկիր մը ի՞նչ պատճառ ունէին երկու նահանգի բաժնելու, ինչպէս Ստրաբոն կ'ուզէ (ԺԲ. 1. 4)։

Իր տեսութեամբ Կապադովկիոյ թագաւորներուն նախնիքն՝ բովանդակ Կապադովկիոյ (Պոնտոսն ալ ալ միասին) սատրապներն էին որոնց ցուցակը հնագոյն ժամանակներէն մինչև Բ. դարու սկիզբը (Քր. առաջ) կ'աւանդէ Բիւզանդիոնի նշանաւոր պատրիարքը Փոտ քաղելով Դիոդորոս Սիկիլիացիի ԼԱ. գրքէն։ (Zimmerer)։

Որքան որ ալ վաւերական պատմութեան մը արժէքը ներկայացնելէ հեռու ըլլայ Դիոդորոս Սիկիլիացիի ցուցակը, սակայն իբր աւանդութեան արձագանգը ունի շատ մեծ արժէք մը և շատ թանկագին ծառայութիւն մըն է զոր Փոտ կը մատուցանէ պատմութեան երբ իր քաղուածներու հաւաքման մէջ, (էջ 517–518) զայն մէջ կը բերէ։

Ըստ այս քաղուածին «Կապադովկիոյ թագաւորները իրենց ծագումը կը բարձրացնեն մինչեւ Կիւրոս, եւ կը հաստատեն նաեւ որ կը սերին եօթն պարսիկներէն որոնք մեռցուցած են Սմերտ մոգը:

Անաւասիկ թէ ինչպէս կը հաստատէին իրենց ցեղին ճիւղագրութիւնը (généalogie) սկսեալ Կիւրոսէն: Ատոսա. օրինաւոր քոյրն էր Կամբիւսի, Կիւրոսի հօրը: Անիկա (Ատոսա) ունեցաւ Կապադովկիոյ թագաւոր Փառնակէն, տղայ մը կոչուած Կալիւս որ ծնաւ Սմերտը, հայրը Արթամնէսի, այն որ ունեցաւ որդի մը կոչուած Անափաս, այր քաջ, նախաձեռնարկ, եւ մին այն եօթն պարսիկներէն որոնք սպաննեցին Սմերտը:

Այսպէս է որ իրենց ծագումը կը բարձրանայ մինչեւ Կիւրոս եւ Անափաս որ, ըստ իրենց ստացած է Կապադովկիոյ վեհապետութիւնը առանց Պարսից հարկ վճարելու: Անափաս ունեցաւ իբր յաջորդ համանուն որդի մը: Ասիկա մեռած ատեն թողուց երկու որդի, Դադամէս եւ Արիմնէս: Դադամէս առաւ մականը: Ասիկա էր նշանաւոր մարդ մը՝ իր մարտական քաջութեամբ եւ գովուած իր կառավարութեամբ, կռուեցաւ յաջողութեամբ Պարսից դէմ եւ մեռաւ պատերազմի դաշտին վրայ: Իր որդին Արիամնէս անոր յաջորդեց: Անիկա եղաւ հայրը Արիարաթէսի եւ Հողոփեռնէսի: Մեռաւ յիսնամեայ թագաւորութենէ մը յետոյ, առանց բրած ըլլալու յիշատակութեան արժանի բան մը: Անդրանիկը՝ Արիարաթէս, ժառանգեց գահը: Կ'ըսուի թէ կը սիրէր արտակարգօրէն իր եղբայրը



եւ զայն բարձրացուց ամէնէն բարձագոյն աստիճաններուն: Զայն ղրկեց Պարսից օգնութեան Եգիպտացւոց դէմ պատերազմին: Հողոփեռնէս, դարձաւ արշաւանքէն յղփացած պատիւներով Պարսից Օքիւս (Ochus) թագաւորին, ի վարձ իր քաջութեան: Վերջապէս մեռաւ իր երկրին մէջ, թողլով երկու որդի, Արիարաթէս եւ Արիսէս: Իր եղբայրը, Կապադովկիոյ վեհապետը, չունենալով օրինաւոր զաւակ, որդեգրեց Արիարաթէսը, Հողոփեռնէսի անդրանիկ զաւակը: Միեւնոյն ատեն, Աղեքսանդր Մակեդոնացին, պատերազմ կը մղէր Պարսից դէմ եւ մեռաւ: Պերտիկկաս, թագաւորութեան պետը, ղրկեց Եւմէնէսը կառավարել Կապադովկիան: Արիարաթէս ինկաւ պատերազմի մը մէջ եւ ինչպէս սահմանակից երկիրները, նոյնպէս Կապադովկիան տիրապետուեցաւ Մակեդոնացիներէն» (տես Bibliotheque Historique de Diodre de Sicile. Tr. de Grec par Ferd. Hoeffer, Hachette 1865, t. IV. էջ 372–373)։

Ահա Դիոդորոս Սիկիլիացիի աւանդածը Կապադովկիոյ թագաւորներու մասին մինչեւ Աղեքսանդր(1), և ինչպէս կը տեսնուի անիկա աւանդական պատմութեան մը հանգամանքը ունի, և կարծես թէ Կապադովկեան թագաւորութեան հնութեան և մեծ արքայական ընտանիքէ մը սերած ըլլալու դրոշմը տալու նպատակով առեղծագործուած է։

Հնագոյն սատրապը՝ զոր կրցած է նշանակել ցանկին հեղինակը, էր Փառնակ որ ամուսնացած էր Ատոսայի հետ, որ քոյր էր Կիւրոս Երէցի (553–525)՝ Կամբիւսի հօր։

Թագաւորներու այս ցանկը մինչեւ «Արքայ Անափաս» կ'երեւայ թէ Կտեսիասէն քաղուած է։

Անկէ ետքը սատրապներու ցանկը թերի կը մնայ մինչեւ Դադամէս։

Արիամնէսի հետ փոփոխութիւն մը կը կրէ ցանկը՝ ուր այլեւս կ'երեւան այնպիսի անուններ՝ որոնք Կապադովկիոյ արքունի տան մէջ սովորական էին, այսինքն Արիամնէս և Արիարաթէս։

Արիամնէս անշուշտ պատմական անձ մըն է, և ան՝ ինչպէս անունը ցոյց կուտայ, ուշ ժամանակի թագաւորներու տունէն։ Միայն թէ ցանկին հեղինակը հնարած է 50 տարուան թագաւորութեան ժամանակամիջոց մը որպէսզի լեցնէ Դադամէսի մահէն (362ին) մինչեւ Մեծն Աղեքսանդրի Փոքր Ասիա մտնելը, պարապ մնացած միջոցը։

Այն ժամանակ պատճառ մը չի մնար տարակուսելու որ Արիամնէս իրապէս հայրն էր Արիարաթէսի, ինչպէս որ ցանկին մէջ կը տեսնուի։

Արդարեւ Արիարաթէս կուսակալն էր Կապադովկիոյ երբ Աղեքսանդր սկսաւ Պարսից դէմ իր արշաւանքը և Ասիոյ աշխարհակալութիւնը (334)։

Հետեւաբար Պարսիկ տիրապետութեան շրջանը առեղծուածային և մթաստուեր հանգամանք մը ունի ուրկէ միայն պզտիկ յիշատակներ ունինք։

Պատմական դէպքերը որոնց Կապադովկիա կը խառնուի, և որոնց հին պատմագիրներ արձագանգ կ'ըլլան Դադամէսի իշխանութեան ժամանակաշրջանին կը պատկանին առաւելապէս։

Պատմութիւնը կը յիշատակէ թէ Եգէականի եզերքները բնակող ժողովուրդները տեսնելով որ Պարսիկ կայսրութիւնը հետզհետէ կը տկարանայ Արտաշէս Ուշեղի ձեռքին տակ, ապստամբեցան Պարսից դէմ

(1) Շարունակութիւնը պիտի օգտագործեմ իր տեղին։

(361) և սատրապները կամ զօրավարները որոնք կը հրամայէին այս երկրներուն, անոնց օրինակին հետեւելով, թշնամացան Դարեհ Արքայից Արքային հետ։

Եգիպտոսի թագաւորը որ զինակցած էր Սպարտայի թագաւորին և չահած իր կողմ Յունական քաղաքները, լուրջ սպառնալիք մը կը ներկայացնէր Պարսկաստանի համար, վասնզի Փոքր Ասիոյ սատրապներն ալ անոր կողմը անցնելու տրամադիր էին։ (Հմմտ. Asie Mineure, էջ 159–160)։

Այս վերջիններուն մէջ ամէնէն նշանաւորներէն մին էր Արիոբարզան Փռիւգիոյ սատրապը, որ Միհրդատի մահէն յետոյ անոր թագաւորութեան տէր դարձած էր (ըստ Քսենոփոնի)։

Ապստամբները իրենց պետ ընտրեցին Որոնդէսը, կամ Որադասը(1) որ երբ պէտք եղած դրամը ստացաւ ապահովելու համար 20,000 մարդերու մէկ տարուան ծախքերը, դաւեց և որպէսզի դիւրաւ Արքայից Արքայէն վարձատրուէր ծովեզերեայ նահանգներուն ընդհանուր սատրապետութեան կոչուելով, սկսաւ ձերբակալել և յանձնել Արտաշէս Ուշեղին անոնք որ դրամ տուած էին իրեն և գրաւեց՝ բազմաթիւ քաղաքներ իրենց պահակազօրքով (Հմմտ Դիոտ. Սիկիլիացի Ա. ԺԵ. գլ. 91)։

Որոնդէսի օրինակը իր հետեւողը ունեցաւ և նման դաւաճանութիւն մը տեղի ունեցաւ Կապադովկիոյ մէջ ուր ծովեզերեայ քաղաքներու ապստամբութիւնը արձագանգ գտած էր և Դարեհ դէմ զէնք վերցնողներ եղած էին։

Արթապան, Արտաշէս Ուշեղի զօրավարներէն մին, այս նահանգը մտաւ գլուխը անցած զայն նուաճելու բաւական զինուորներով։

Դատամէս կարիացին, որ կը կառավարէր իբր սատրապ այս նահանգին այն մասը ուր կը բնակէին «Սպիտակ Սուրիացիները» և որոնք՝ ապերախտութեամբ Արքայից Արքային դէմ ապստամբողներուն միացած էին, քալեց անոր դէմ, կազմելէ յետոյ բանակ մը 20 հազար հետիոտն և բազմաթիւ հեծեալ զօրքերով։

Բայց Միթրոբարզան, Դատամէսի աները, որ կը հրամայէր հեծելազօրքին, Արքայից Արքային առջեւ շնորհ գտնելու և իր անձնական ապահովութեան համար, Արթապանի հետ նախապէս համաձայնելէ յետոյ, գիշեր մը խոյս տուաւ, իր բոլոր գունդով և ապաստանեցաւ թշնամի բանակը։ Դատամէս իմանալով այս դաւաճանութիւնը անցաւ իր հետեւակներուն գլուխը և հետապնդեց փախստականները որոնց ետեւէն հասաւ ճիշդ այն պահուն որ անոնք կը միանային թշնամիներուն։

Միեւնոյն ատեն անիկա յարձակեցաւ թէ՛ դաւաճանող հեծելազօրքին և թէ՛ իրեն դէմ եկող Արթապանին վրայ և մեծ կոտորած տուաւ երկու բանակներուն ալ։

---

(1) Որոնդաս Արեւելեան Հայաստանի սատրապն էր երբ Քսենոփոն Հայաստան մտաւ (401)։ Անիկա փեսան էր Արտաշէս Ուշեղին։ Իրեն ժամանակակից է՝ Տրիբազ՝ իբր արեւմտեան մասին սատրապը, որուն նստոցն էր Մելիտինէն։ Տրիբազին տրուած է «Բարեկամ Թագաւոր»ին տիտղոսը։





Արթապան միւս կողմէն, կասկածելով որ այս եղածը պատերազմական դաւ մըն էր միայն, հրամայեց իր զինուորներուն ջարդել դաւալից հեծելազօրքը որ իրեն կը դիմէր։ Այսպէս երկու սուրի մէջ առնուած, Միթրոբարզանի հեծելազօրքը հարկադրուեցաւ կռուիլ միեւնոյն ատեն երկու բանակներու դէմ, որոնցմէ մէկը կը հարուածէր իր բանակը իբր դաւալից և միւսը՝ պատժել կ'ուզէր զայն իբր մատնիչ։ Պատերազմի դաշտին վրայ ինկան 10,000 մարդիկ թէ՛ մէկ և թէ՛ միւս կողմէն։

Այս յաջողութիւնը աւելի մեծցուց զինուորական փառքը Դատամէսի։ (Հմմտ. Asie Mineure էջ 160)։

Արտաշէս Ուշեղ գիտէր թէ ինչ կ'արժէր այս տեսակ վարիչ մը, ուստի անոր դէմ ղրկեց ուրիշ զօրաւոր բանակ մը զանազան ազգի զինուորներով։

Դատամէս որ իր վրայ ղրկուած ուժին միայն մէկ քսաներորդը ունէր բայց նաև տաղանդ և իր գտնուած վայրերուն բնական առաւելութիւնները, աշխատեցաւ փակել Կիլիկիոյ անցքերը և յաջողեցաւ իր վրայ յարձակող բանակին մեծ կոտորած տալ։

Արտաշէս տեսնելով որ զէնքով պիտի չկարենայ անոր յաղթել, դաւով մը զայն սպաննեց (տես Կեռնելիոս Նեպոսի «Դատամէսի կենսագրութիւն», Asie Mineure էջ 161), և դարձեալ երկիրը տիրապետուեցաւ Պարսիկներէն, մինչև Աղեքսանդրի ժամանակ, երբ Արիարաթէս Ա. (331–322) ձեռք բերաւ երկիրին անկախութիւնը, քիչ յետոյ խոնարհելու համար Մակեդոնացի Մեծ աշխարհակալին առջև։

Կապադովկիա Պարսից տիրապետութեան շրջանին իբր հաղորդակցութեան երկիր խորագոյն Ասիոյ և Եգէականի շքեղ նահանգներուն միջև, և իբր Աքեմենեան պետութեան ամենախաղաղ և հաւատարիմ նահանգներէն մին, շատ կարեւորութիւն ունէր։ Հոն Պարսիկները խաղաղօրէն թափանցած և զայն ամէն կերպով կայսրութեան ընդհանուր զանգուածին մէջ ձուլած էին։

Կապադովկիոյ մէջ արդէն գոյութիւն ունէր աւատական դրութեան մը սկզբնաւորութիւնները և շատ զարգացած գերութիւն մը։

Պարսիկները այս դրութիւնը հետզհետէ զարգացուցին և չափազանցութեան հասցուցին։

Հողային բոլոր կալուածները բաժնուած կ'երեւայ ազնուականներու և քուրմերու միջև, որոնք մեծ մասամբ Իրանէն գաղթած եկած էին։ Երկիրը ծածկուած էր ամուր դղեակներով, որոնք թէ՛ արքունի ամրոցներ էին և թէ՛ ազնուականներու բնակավայրեր։ Կեռնելիոս Նեպոս՝ Դատամէսի կենսագրութեան մէջ յաճախ կը յիշէ Կապադովկիոյ բերդերը։ Ստրաբոնի (ԺԲ. 2. 7) յիշած ամրոցներուն շատերը այս ժամանակէն ըլլալու են, (Հմմ. Zimmerer ՀԱ. 1900 էջ 34)։ Ստրաբոն, որ Կապադովկիացի է, յաճախ կը յիշէ քուրմերու մեծամեծ կալուածները, առաջուան ազատ հողատէրը հողին կապուած գերի մը դարձած էր։ Ամրոցին քով կը բարձրանար մեհեանը, վասնզի թէև Պարսիկները մեծ ներողամտութիւն ցոյց տուին բնիկ Կապադովկեան կրօնին և նոյնիսկ մեծամեծ մեհենատեղիներու քուրմերը թողուցին իրենց ժառանգական պաշտօններուն մէջ՝ արքունական ճոխութեամբ և տէր իրենց անթիւ քրմուհիներուն (hierodule, աղախիններ մեհեաններու), սակայն բագինի դէմ բագին կանգնեցին։ Ամէն կողմ կազմուե-

ցան մօտերու ընկերութիւններ և սրբազան տեղեր՝ որ Որմզդի պաշտամունքին նուիրուած էին։ Այս ժամանակէն է, կը կարծէ Zimmerer (ՀԱ. 1900 էջ 34), այն բազմաթիւ բարձրանիստ քարայրներու ծագումը, որոնք ուղեւորի մը աչքին յանկարծ կ'երեւան յաճախ լեռներու կարծես անմատչելի գագաթներուն վրայ։

Հուրի պաշտամունքը և լեռներու բարձրաբերձ բարձրութեանց վրայ ծագող արեւուն մատուցուած զոհը՝ ի հարկէ պէտք ունէր պատսպարանի և օթեւանի զոհագործներու և անոնց արբանեակներու համար՝ հովին ու օդին փոփոխականութեանց դէմ, տեղեր սրբազան կարասիներու պահպանութեան, ապրուստի պէտքերու, բնակութեան և վառելու փայտին համար։

«Միայն այսպէս կրնամ մեկնել, կ'ըսէ Zimmerer, օրինակի համար Արգէոսի կատարը գտնուող քարայրները, վասնզի անշուշտ չենք կրնար զանոնք բնակարաններ համարել՝ Ալպինեան մտօք (իբրև ապաստանարան լեռն մագլցողներու)»։

Բայց ի վերջոյ Պարսից տիրապետութիւնը ժողովրդական ընոյը ամէնէն աւելի էր այլ և այլ նահանգներու մէջ երթեւեկութեան դիւրութիւնը ու աշխոյժը։ Արքունի կրկին պողոտաներ կը կտրէին կ'անցնէին Կապադովկեան հողէն, այն հռչակաւոր արքունի պողոտան՝ որուն վրայ կ'երթեւեկէին արքունի պատգամաւորները։ Հերոդոտոս (Ա. 75, Ե. 52) կը հաստատէ որ Կրեսոսի ժամանակ կային արդէն նաեւ Ալիսի կամուրջները, բայց Ցունաց քով տիրող կարծիքը տարբեր էր (Հմմտ. Zimmerer, ՀԱ. 1900. էջ 34)։ Պարսից արքունի պողոտան Շոշն ու Եկբատանը կը կապէր տէրութեան հեռաւոր մասերուն հետ։ Սարտիկէ քաղաքէն, յետոյ Եփեսոսէն կ'երթար ուղին Ալիս, Եփրատ և Տիգրիս, մեծ ու փոքր Զաբ, Գինդէս և Քոյասպէս գետերուն վրայէն դէպի Շոշ (Հմմտ. A· Dissand, La Lydie et ses voisins. 17, նաեւ ՀԱ. 1933 էջ 220)։ Կանոնաւորապէս օթեւաններ կանգնուած էին ամէն 3–5 փարսախին ուր արքունի սուրհանդակները ձիերը կը փոխէին։ Արքայն ալ այս տեղերը սովոր էր իջնալ և օթեւանիլ իր ճամբորդութիւններու ժամանակ։ Ճամբան կարեւորագոյն տեղերը բերդեր կառուցուած էին և պահապաններ դրուած։ Պողոտային կառուցումը հաւանօրէն Դարեհի գործն էր։ Այսօր ալ բազմաթիւ դամբանաբլուրներ (tumuli) կը ցուցընեն պողոտային ուղղութիւնը։ (Հմմտ. ՀԱ. 1900, էջ 34)։

Մեր արդի միջոցներով չենք կրնար արեւելեան Կապադովկիոյ պողոտաներու ցանցը լիովին վերակազմել։ Բայց այսչափը կրնանք ապահովութեամբ հաստատել որ գլխաւոր պողոտան կ'անցնէր Սեբաստիա–Կոմանա–Մելիտինէ գծով Բիմբոյա (Bimboa) լերան բոլորտիքէն հիւսիսէն՝ ոչ թէ հարաւէն, պատելով դառնալով։ Ասոր հետ Պտոնգարիսի մօտ հարաւէն կը միանար այն պողոտան՝ որուն վրայ կ'իյնար Կոմանա։

Եթէ Կոմանայի տեղը(1) գտնենք Սարոսի վերին հովտին մէջ «Եէտի–օլուկ» կիրճին բերանը, այն ժամանակ կը միաբանին այն տեղեկութիւնները որոնց համեմատ Կոմանա Մելիտինէէն հեռու էր իբր 150 մղոն (= իբր 220 քիլոմէտր) (տես նոյն)։ Երկրորդ, աւելի հարաւային պողոտան՝ Քսենոփոնի արշաւանքին պատմութեան մէջ —որուն հետեւեցաւ Կրտսերն Կիւրոս— և Ստրաբոնէ (ԺԴ. 2. 29) յիշուած միացման ուղին դէպի Արտեմիդորոս(1) կ'ապահովէին պատերազմի և խաղաղութեան ժամանակ երկրին հաղորդակցութիւնը։

(1) Ն. Կարոլիտիս ալ (N. Karolidis) Τὰ κόμανα καὶ τὰ ἐρείπια αἰτῶν, Աթէնք, 1882) Կոմանան կը դնէ Սարոսի հովտին մէջ ի Շարտերէ։



Ալիս գետին վրայ ձգուած էին ամրացուած կամուրջներ, և այն ժամանակ արդէն ամէն պարագայի մէջ, մեծ պողոտաները կապուած էին իրարու երկրորդական ուղիներով որոնց միացման կէտին վրայ էր նահանգին Մաժակ ( = Կեսարիա) մայրաքաղաքը(2)։ Ալիսի կամուրջները և անոնց ուղղութիւնը գտնելու համար Zimmerer կ'ըսէ թէ կռուան ունինք այսօր ալ գոյութիւն ունեցող քարահանքերը (Քէսիք-Քէօփրիւ և Չէշմէ-Քէօփրիւ տեղերը), կամուրջի աւերակ մը զոր գտած է (Ռաշիտ պէյ քէօյ գիւղ) և վերջապէս Ալիսի երկու մեծ և շատ բանուկ հուներն Արեբսունի, Չըքըն-Ագըլի և Եաղճըյի։ (Հմմտ. Zimmerer, ՀԱ. 1900, էջ 35)։ Վասնզի եթէ աւանդապահ Արեւելքի մէջ սառած ու անփոփոխ բան մը կայ, ան ալ ամէնէն աւելի ճիշդ հաղորդակցութեան ճամբաներն են, որոնք տակաւին նախնեաց բացած նոյն գիծերուն վրայ կը շարժին։ Հազիւ եւրոպական ճարտարագէտներու նոր ուղիները և արուեստագիտօրէն բոլորովին այլակերպ երկաթուղին հոս փոփոխութիւն մը մուծած են։ Ասով շատ բնական է որ ժամանակին հետ ճամբաներու ամբողջ ցանցն ալ փոխուի։ Բայց առայժմ ուղտն ու ձին, էշն ու սայլը նոյն ճամբաները կը շարունակեն երթալ զոր կ'երթային դարեր առաջ։ Օթեւաններու աւերակներ, մղոնաքարեր, դիտարան-բլուրներ և կամրջագլուխներ պայծառ կը ցուցընեն ճամբաներուն ուղղութիւնը։ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 35)։

Պարսիկ տիրապետութեան շրջանին կը տեսնուի Կապադովկիոյ մէջ երեւոյթ մը, որ նշանակելի է։ Երկիրը մեծապէս կ'ենթարկուի Պարսիկ մշակոյթին ազդեցութեան։ Քր.է առաջ Գ-Բ դարերէն կը գտնուին Արամէական արձանագրութիւններ (ՀԱ. 1933, էջ 220) որոնք յետոյ Աքեմենեան շրջանին մինչեւ Սարտիկէ (Լիւդիա) պիտի տեսնուին։ O. G. von Wesendonkի յօդուածը «Արամերէնի գործածութիւնն Աքեմենեան պետութեան մէջ», թարգմ. Հ. Ց. Տաշեան, ՀԱ. 1933, էջ 210–222)։

Աքեմենեան շրջանին առեւտրական և դիւանագիտական լեզուն՝

(1) Լիկաւոնիոյ Կորոյ անցքէն մինչեւ Գարսաւրա, Կապադովկիոյ սահմանին վրայ փոքրիկ քաղաք մը, 120 ոդատ երկայն Սոյանդուսի և Սադակորայի վրայէն, 680ին դէպի Մաժակ մայրաքաղաքը կը տանէր։ (ՀԱ. 1900 էջ 35),

(2) Բրօֆ. Մարքարտ կ'ըսէ թէ «անճիշդ է ըսել թէ Մաժակ մայրաքաղաքն էր սատրապութեան։ Սատրապութեան մայրաքաղաքն էր նոյնիսկ Արիարաթէս Ա.ի օրով՝ Գազիւրա՝ Իրիս գետին վրայ, ինչպէս դրամները կը վկայեն։ Մաժակ մայրաքաղաք կրնայ եղած ըլլալ միայն Արիարաթէս Ա.էն ետքը՝ իշխանութեան վերանորոգութեան ատեն»։ (ՀԱ. 1900, էջ 231)։

Արամերէնը ըլլալով անոր գործածութիւնը Կապադովկիոյ մէջ անոր զարգացման որոշ աստիճանը ցոյց կուտայ։

Արդարեւ Կապադովկիոյ Մազդէական հաստատութիւնները՝ բաց ի Իրաներէն լեզուէն, Քր.է առաջ իբր 400ին կը գործածէին Արամերէնը (Fr. Cumont «Les Religions Orientales dans le Paganisme Romain» և Կապադովկեան Տարեցոյց, տես ՀԱ. 1933 էջ 223, Վ.էզէնտոնքի յօդուածը), որուն քով նաեւ Յունարէնը, կ'երեւայ Արիարամնիոյ Սագարիոս զօրավարին այն արձանագրութեան մէջ, ուր անիկա իբր «Մոգ Միհրի» կը ներկայանայ։ (ՀԱ. 1933, էջ 223)։ Կապադովկեան մոգերը իրենց արամէական յորջորջումով կը ներկայացուէին իբր Մագուսայի, որ Քր.է առաջ Ե. դարը կը մատնանշէ (ըստ Մարկուարտի, Untersuchungen zur Geschichte von Eran. 1, 10, 35)։

Մոգերը՝ Կապադովկիոյ մէջ Արամերէնը գործածելով, երկիրը հաղորդակցութեան դրած են կերպով մը դարու քաղաքակրթութեան հետ, վասնզի Արամերէնը՝ Աքեմենեանց օրով այն արեւմտեան նահանգներուն մէջ որոնք լեզուական միութիւն չունէին, պաշտօնատուններու ընդհանուր հաղորդակցութեան միջոցը եղած էր, զոր կը գործածէին նաեւ Փոքր Ասիոյ մոգերը։ (ՀԱ. 1933, էջ 230)։

Արդ քանի որ տարակոյս չկայ թէ Մոգերը իբր վիճակ կամ տոհմ, Մարաց հետ կապուած էին, ուրեմն Կապադովկիոյ յարաբերութիւնները մոգերու հետ կրնայ տարուիլ մինչեւ Մարական տիրապետութեան շրջանը։

Իբր փաստ այս տեսութեան թէ մոգերը Մարական կամ շատ շատ Պարսիկ ծագում ունին, Վ.էզէնտոնք կ'ըսէ թէ Բարսեղ Կեսարացի (Թուղթ ՄԾԸ. առ Եպիփան 4) գիտէ տակաւին թէ Մագուսայք «Բաբելաստանէն» Կապադովկիա եկած են։ Անշուշտ կարելի չէ տառական իմաստով առնել այս խօսքը, այլ որոշ է թէ Ս. Բարսեղ սաով միայն մոգերու ընդհանուր կերպով «Քաղդէական» քաղաքակրթութեան հետ յարաբերութիւնները կ'ուզէ մատնանշել։ Հաւանօրէն Մոգերը կը կազմէին այն տարրն, որ Մարաց շրջանէն ի վեր կապակցութիւն կը պահէր Մերձաւոր Ասիոյ մտաւոր աշխարհին հետ, վասնզի երեւոյթը ընդհանուր էր և Լիւդիոյ և դրացի երկիրներու մէջ տարբեր չէր կացութիւնը Բաբելաստանի և Կապադովկիոյ մէջ տիրող վիճակէն։

Մշակութային յարաբերութեանց հետ պէտք չէ մոռնալ նաեւ առեւտրական յարաբերութիւնները, որոնք Արեւելքի հետ շարունակուած են Բաբելոնեան և Մար-Պարսկական տիրապետութեանց շրջանին եւս, անշուշտ խորունկ ազդեցութիւն մը ունենալով երկրին բնակչութեան վրայ։ Որոշ տուեալներ կան հաստատող թէ Պարսիկ տիրապետութեան շրջանին գոյութիւն ունէր առեւտրական և տնտեսական բարգաւաճ կեանք մը (տես Deutsche Levant-Zeitung, 1913 Մայիս 15, էջ 400 և Բրոֆ. Խաչատրեան, նոյն էջ 304–307) որ բնական է չէր կրնար անհետեւանք մնալ երկրին կեանքին վրայ, որ միւս կողմէն — ինչպէս տեսնուեցաւ — կը կրէր կարդաւորուած և քաղաքակիրթ այս պետութեան հզօր ներգործութիւնը իր մտաւոր և նիւթական մշակոյթին վրայ։

Այնպէս որ իբր մասնաւոր կերպով շահագրգռական երեւոյթ կրնանք ըսել թէ Կապադովկիան, Մար-Պարսիկ տիրապետութեան տակ կը ներկայացնէր այն երկիրներէն մին որ կրած էր դրոշմը և ներ-



գործութիւնը արեւելեան այդ ցեղերուն, որոնց հետ ընդելուզուելու, նոյնանալու և համախառնուելու ճամբուն վրայ էր, երբ յանկարծ Պարսիկները վանուեցան և աւելի հզօր քաղաքակրթութիւն մը թափանցեց երկրէն ներս, զինքը խլելով և անջատելով Արեւելքէն և հարկադրելով որ դէպի Արեւմուտք դարձնէ իր ակնարկը։

Կապադովկիա այնքան նոյնացած և այնքան համակերպած էր Պարսիկ տիրապետութեան հետ, որ Աքեմենեանց պետութեան կործանումը Կապադովկիոյ մէջ յանկարծահաս դժբախտութեան մը տպաւորութիւնն ըրաւ, և Մակեդոնական աշխարհակալութիւնը քիչ ազդեցութիւն պատճառեց։ Այս կէս-բարբարոս կամ գերութեան վարժուած ազգերուն մէջ ազգային բուն զգացում գրեթէ չի կրնար փրնտռուիլ, ուր տեղ կը գտնենք ոմանց քով սաստիկ միտում մը կղզիանալու հին սովորութեանց մէջ, ուրիշներու քով տեսակ մը տարապայման մեծարանք Հռոմայեցի զօրավարներուն՝ առանց որոնց կարծես հաստատուն կռուան մը ունենալ չէին կրնար։ Թէ՛ Իրիսի և թէ՛ Ալիսի Կապադովկիացիք Աքեմենեան հարստութեան տեղ պէտք ունէին բնիկ, բայց Պարսիկ ցեղերէ ծագած իշխաններու, (Zimmerer, ՀԱ. 1900 էջ 35) և ատիկա ունեցան։

Բ.

# ՀԱՅՔ ԵՒ ԳԱՄԻՐՔ

## ՀՆԱԳՈՅՆ ԵՒ ՆԱԽԱՊԱՏՄԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Եթէ լայն տեղ մը տուի անյիշատակ ժամանակներէ մինչև Աղեքսանդրի ժամանակները Կապադովկիոյ պատմութեան, մասնաւորապէս անոր Նախահաթեան և Հաթեան շրջաններուն վրայ ծանրանալով ո՛չ թէ միայն անոր համար էր որ Կապադովկիա միայն այդ շրջանին էր որ քաղաքակրթական մեծ կեդրոն մը և համաշխարհային պատմութեան համար ամենամեծ նշանակութիւն ունեցող դեր մը կատարած էր, այլ անոր համար մասնաւորապէս որ այդ ընդարձակ ժամանակամիջոցին մէջ որ Քս.է առաջ 4000 էն մինչև 301 թուականը կ'ընդգրկէր, կը կերտուէին Կապադովկիացի և Հայ ժողովուրդները միեւնոյն հիմնախաւին վրայ գրեթէ համանման ցեղախառնումներու ենթարկուելով և նման մշակոյթներու ազդեցութիւնը կրելով։

Արդարև, տեսնուեցաւ թէ Դ. Հազարամեակին մէջ բովանդակ

Մերձաւոր Արեւելքի մէջ կ'ապրէին ցեղային ընդհանուր նկարագրով միացած ժողովուրդներ կամ աւելի ճիշդ ազգեր, որոնք այսօր գիտունները կը գտնեն միակ խմբաւորման մը մէջ, զայն կոչելով զանազան անուններով, ինչպէս Հայասիպ, Սուբարու, Համաիորաաիական, Հաքասիպ, Ուրարտեան, Կովկասեան կամ Յաբեթական եւայլն։

Հետեւաբար այդ հնագոյն ժամանակներուն, այսինքն Նոր Քարային շրջանի սկիզբէն՝ եթէ ոչ միալեզու գէթ միացեալ բնակչութիւն մը կ'ապրէր թէ՛ այսօր Հայաստան կոչուած երկրին և թէ՛ ապա Կապադովկիա կամ Գամիրք անունով ճանչցուած աշխարհամասին մէջ, Հայաստանի մէջ Սուբարու և Կապադովկիոյ մէջ Խէթ կամ Նախահայք անուններով ծանօթ։

Այս ժողովուրդը, եթէ եկուոր էր, Դ. Հազարամեակին պէտք էր եկած ըլլար Կապադովկիա (տես վերը էջ 62 – 64) Հայաստանի ճամբով, հոն ձգելով իր մէկ մասը կամ ուրիշ կերպով խօսելով ցեղը տարածըւած էր Կովկասէն հարաւ և հետզհետէ նուաճած էր շրջակայ երկիրները և հասած էր մինչև՝ վերջը Կապադովկիա կոչուած երկիրը։

Բրոֆ. Մինասեան նոյնիսկ կը կարծէ թէ այս ցեղը որ նախածնողը եղած է աշխարհի քաղաքակրթութեան, իբր նախնական օրօրան կամ ծննդավայր ունեցած է Հայկական բարձրաւանդակը, առաջ քան նոյնիսկ Դ. Հազարամեակը և անկէ է որ տարածուած է զանազան կողմեր և մասնաւորապէս իր գլխաւոր կեդրոնը դարձուցած է անազան Կապադովկիա կամ Գամիրք կոչուած երկիրը, ուր հիմնած է Խատտուշաշ մայրաքաղաքը և Խաթի (=Նախահաթ) պետութիւնը։

Ազգաբանական այս խաւը որ թէ՛ Հայկական բարձրաւանդակին և թէ՛ Կապադովկիոյ նախապատմական հիմնախաւը կը ներկայացնէ և որ մինչև հիմա, հազարաւոր տարիներէ յետոյ պահած է իր ֆիզիքական և մշակութային առանձնայատկութիւնները և նոյնիսկ զանոնք փոխանցած է իրեն խառնուած շատ մը ժողովուրդներու, իր մշակոյթին շատ մը տարրերով, ինչպէս իր արհեստագործութեամբ, ճարտարապետութեամբ, կենցաղով, (Բրոֆ. Խաչատրեան, էջ 121 – 123), իր ընկերա–ընտանեկան կազմին հիմն կազմող «Մայրական իրաւունք»ով (Matriarcat), կրօնական հաւատալիքներով, իր սովորութիւններով դեռ կ'ապրի ժամանակակից Հայերուն և Փոքր Ասիոյ ինչ ինչ մասերու բնակչութեան մէջ, այնպէս որ շատ մը գիտուններ Հայերը կը համարեն Փոքր Ասիական հնագոյն նախաբնակ ժողովուրդին հազիւ փոփոխուած սերունդը (տես Բրոֆ. Խաչատրեան Հայ. Սեպ. Տրց. Պատմ. էջ 126 նաև էջ 111 և 121 – 123, և G. Contenau, La Civilisation des Hittites et des Mitanieus, 1934 էջ 43)։

Թէ՛ Կապադովկիոյ և թէ՛ Հայաստանի մէջ ապրող այս համացեղ ժողովուրդը որ հիմնախաւը կը ներկայացնէր այս երկու երկիրներու բնակչութեան, ունեցած է այս տեղերը անջատ պետական կազմակերպութիւններ, սակայն քաղաքակրթական ընդհանուր տարրեր՝ որոնք իւրաքանչիւրը իրենց միջավայրին մէջ զարգացուցած են իրենց մշակոյթին տալով ուրոյն դրոշմ։

Այս երկու պետութիւնները, Խաթիան (Նախահաթերու երկիրը) և Սուբարուն, որոնք քով քովի ապրած են մինչև Ի. դար (Քս.է առաջ), նոյն դարուն կ'ընդունին իրենց մէջ նոր ցեղային տարրեր և կ'ենթարկուին համանման փոփոխութիւններու։



Խաթի (=Նախահաթ) պետութիւնը հաւանաբար Դ, Հազարամեակին վերջերը կամ Ի. դարուն (Քս.է առաջ) կը նուաճուի Փոքր Ասիա խուժող Հնդեւրոպական հոսանքէ մը (Նէսիացիներ կամ Հաթեր, տես վերը էջ 64 – 65, 89)։

Իսկ իրենց միւս ճիւղը՝ որ Հայաստանի և Հիւսիսային Միջագետքի կը տիրէր Սուբարու անունով, դարձեալ շուրջ 2000ին (Քս.է առաջ) կը նուաճուի հնդեւրոպական Խարրի-Միտանիներու կողմէն։

Թէ՛ Կապադովկիա և թէ՛ Հայաստան խուժող Հնդեւրոպացի ժողովուրդը կուգար հիւսիսէն (տես վերը էջ 89) և դարձեալ կը գրաւէր գրեթէ բոլոր Մերձաւոր Ասիան, Բաբելոնը և Եգիպտոսն ալ մէջը ըլլալով (տես վերը էջ 95 – 96)։

Անոնց անցման ճամբան դարձեալ Հայաստանն էր, (Տաշեան ՀԱ. 1934 էջ 30)։

Թէ՛ առաջին և թէ՛ երկրորդ Հնդեւրոպական ժողովուրդները տիրելով քաղաքականապէս բնիկներուն վրայ, ազգաբանօրէն ո՛չ միայն չկարողացան պահպանել իրենց ուրոյն ազգային մարմնական տիպն ու լեզուն, այլ պարտաւորուեցան բնիկներէն շատ բան իւրացնել և անոնց նմանիլ և այսպէս պարտուեցան տեղացի միաձոյլ ժողովուրդէն և անոր հետ ձուլուեցան ժամանակի ընթացքին։ Հետեւաբար դարձեալ թէ՛ Հայաստանի և թէ՛ Կապադովկիոյ բնակչութիւնը պահեց իր ցեղային նոյնութիւնը, վասնզի երկու տեղերուն մէջ ալ համացեղ նախաբնիկներուն Ի. դարուն եկան խառնուիլ Հնդեւրոպական ցեղեր և կազմել նոր պետութիւններ, Կապադովկիոյ մէջ՝ Հաթեան կայսրութիւնը և Հայաստանի մէջ՝ Խարրի-Միտանիներու հզօր պետութիւնը։ (տես վերը էջ 92, 95–96)։

Ինչպէս որ Հաթերը (= Նէսերը) տիրելով Խէթի (=Նախահաթերու) երկրին, իւրացուցին անոնց մշակոյթը, Արի-Միտանիներն ալ տիրելով Սուբարուի, իւրացուցին անոնց մշակոյթը, որ ինչպէս յիշատակարաններ կը հաստատեն, Մերձաւոր Ասիոյ մէջ տեսակ մը միջազգային բնոյթ ունէր։

Խարրի-Միտանի, գրաւեց ժամանակին ամենաքաղաքակիրթ երկիրներուն՝ Բաբելոնի, Եգիպտոսի և Փոքր Ասիոյ միջավայր դիրք մը և դարձաւ հաղորդակցութեան գլխաւոր հանգոյցը Սև Ծովու, Միջերկրականի և Պարսից Ծոցին միջև։

Անիկա ինչպէս տեսնուեցաւ Եգիպտոսի ու Բաբելոնի հետ կազմեց Մերձաւոր Ասիոյ չորս մեծ պետութիւններէն մին (վերը, էջ 98)։

Հաթերը և Խարրի-Միտանիները, նախաբնիկ հիմնախաւի մը Հնդեւրոպական պատուաստով նման ցեղախառնումի ենթարկուած՝ գրեթէ նոյնանման պայմաններու մէջ կազմակերպուեցան և զարգացան և ունեցան փառաւոր պատմութիւն մը։

Հետեւաբար 2030էն 1200 Քր.է առաջ, թէ՛ Կապադովկիոյ և թէ՛ Հայաստանի մէջ կ'ապրէին երկու ժողովուրդներ, Հաթեր և Խուրրի-Միտանիներ, որոնք ունէին նոյն և նման յատկանիշներ, ճիշդ Քր.է առաջ 4000–2000 ապրող բնակիչներուն Խէթիներուն և Սուբարուներուն պէս։ Հոն ալ նախասիական նախաբնիկներուն վրայ աւելցած էր եկուոր հնդեւրոպեան տարր մը, հոս ալ։

Ուստի անկարելի է ուրանալ ցեղակցութիւնը Հայաստանի և Կապադովկիոյ բնակչութեան առաջին երկու խաւերուն որոնց ցեղական

անուններուն միջեւ ալ կապակցութիւն մը գոյութիւն ունենալ կը թուի, վասնզի Կապադովկիոյ մէջ իրենց ստացած Հաթ=Հատ անունին եւ Հայ կոչումին միջեւ յարաբերութիւն մը կը տեսնուի եւ Տաշեանի պէս մեծատաղանդ գիտուն մը վերջերս եկած յանգած է այն տեսութեան թէ Հայաստանի նախաբնիկները հաւանօրէն կը կոչուէին Հայ՝ որ այլափոխութիւնն էր Hattiին (ՀԱ. 1934, էջ 28) եւ երկիրը Հայասա (Hayasa) որուն a(s̊a) մասնիկը աւարտ մըն է որ կայ ուրիշ անուններու մէջ ալ ինչպէս կ'ըսէ հեղինակաւոր Մխիթարեանը (տես նաեւ Բրոֆ. Խաչատրեան Հայ. Սեպ. Տրջ. Պատմ. էջ 548-549)։

Ուստի կրնանք Տաշեանի հետ հետեւցնել թէ Հայ ազգին գլխաւոր զանգուածը՝ կամ անոր սկզբնական խաւը՝ Հայք (Հատք) «կը նստէին ոչ միայն 'ի Փոքր Հայս (ցորչափ ասի Հաթայ «Վերին Աշխարհի»(1) չէր վերաբերեր), այլ նաեւ Մեծ Հայոց լեռնաշխարհի մէջ, զոնէ Արեւմտեան Հայաստան, ո՛չ միայն Գամրաց արշաւէ յառաջ, ոչ միայն յառաջ քան Ուրարտեանց տիրապետութիւնը, այլ նաեւ յառաջ քան առհասարակ Թրակեան-Փռիւգական զաղթականութիւնը դէպի ի Փոքր Ասիա» (ՀԱ. 1934, էջ 28-29)։

Կրնայ մտածուիլ թէ Hattiներու (Նախահաթեր) մէկ մասը անցած է Արեւմտեան Հայաստան, այն ժամանակամիջոցին երբ Նախահաթերու երկիրը եւ անոնց Հատտի կամ Խատտուշաշ մայրաքաղաքը գրաւուած է Նէս=Հաթեր է։

Հ. Տաշեան կ'ըսէ թէ «կարելի է, բայց ապացոյց չունինք» (ՀԱ. 1934, էջ 29), բայց դարձեալ ըստ նոյն բազմահմուտ գիտունին եւ քննասէրին «յամենայն դէպս Հայասայի ժողովուրդն Արեւմուտքէն եկած չէր. Հաթեան քնագիրք կը ցուցնեն թէ ընդհակառակը Հայասա կը հգնի Արեւելքէ դէպի Արեւմուտք դիմելու, արշաւանքներ կ'ընէ դէպի «Վերին Աշխարհ», ուստի Կապադովկիա(2): Ինչպէս Շուպէ (հայ Տոփք), ինչպէս Ալշէ (հայ.՝ Աղձնիք), նոյնպէս Հայաշա (= Հայք) եւայլն. կազմած են հայ ազգին գլխաւոր զանգուածը»: (ՀԱ. 1934, էջ 29)։

Հետեւաբար Հայաշայի բնակիչները խիստ մեծ հաւանականութեամբ ցեղակիցներն էին Նախահաթերուն եւ անոնց պէս յետոյ ձուլուած հնդեւրոպական ցեղերու հետ, որոնք շուրջ ԺԲ. դարուն անգամ մըն ալ կ'ողողեն Փոքր Ասիան Վոսփորի ճամբով եւ կը հասնին մինչեւ Վանի լիճը, կործանելով հին աշխարհը իր մշակոյթովը, եւ մասնաւորապէս Հաթեան պետութիւնը։

Այս ցեղերէն ամէնէն հզօրը՝ Մոսք—Մուշք (Արի—Փռիւգներ) տէր կը դառնայ ոչ միայն Կապադովկիոյ այլ կը տիրէ 1176էն սկսեալ Հայկական բարձրաւանդակին հարաւ-արեւմտեան հովիտներուն եւ լեռներուն եւ այն տեղէն կը թափի Հիւսիսային Միջագետքի դաշտերը (տես վերը էջ 121)։

Տիգլատպիլեսար Ա. (ըստ Ս. Սմիթի 1098-1068 եւ ըստ Ֆորրերի 1117-1080) հազիւ կրնայ կասեցնել այս «ազգերու սարսափ» համարուած հրոսախումբին առաջխաղացութիւնը։ (Բրոֆ. Խաչ. նոյն, էջ 276)։

(1) «Վերին Աշխարհը» Բարձր Հայքէն մինչեւ Անտիտաւրոս հասնող ծննդավայր երկիրն է Խարրի թագաւորներուն նախորդող Կուշշարի թագաւորներուն։ (Ֆորրեր, Real· I. 245)։

(2) Տես վերը, էջ 103.



Ուրեմն Կապադովկիոյ բնակչութեան Դ. խաւը, Մոսք-Փռիւգները, կ'ըլլան նոյնպէս Դ. խաւը Հայաստանի, որով երկու երկիրներու ցեղային համանմանութիւնը կը պահպանուի։

Շուրջ Թ. դարուն Հայաստանի կամ անոր կարեւոր մէկ մասին քաղաքական տիրապետները կը դառնան Ուրարտու-Խալդերը, որոնք առաջին անգամ երեւցած են Հայկական բարձրաւանդակին հարաւ-արեւմտեան կողմը, այն է վերին Տիգրիսի եւ ստորին Արածանիի աւազանին մէջ, սկսեալ ԺԴ. դարէն, (Բրոֆ. Խաչատրեան, էջ 258 եւ 276), ուր առաջին անգամ զիրենք կը յիշատակէ Սաղմանասար Ա. (շուրջ 1265-1243)։ Սակայն իր տուած տեղեկութիւնները կը հաստատեն թէ Ուրարտու նոր պետութիւն մը չէր այլ աւելի վաղ ժամանակներէն գոյութիւն ունէր (Խաչատր. էջ 260-262), ինչ որ ոմանց՝ —ի մէջ այլոց Տաշեանի— կարծել տուած է թէ անոնց գործունէութիւնը Հայաստանի մէջ պէտք է սկսած ըլլայ նոյնիսկ Քր.է առաջ Բ. հազարամեակէն (ՀԱ. 1934 էջ 29)։ Իսկ իրենց ծագումը Բրոֆ. Խաչատրեան (էջ 264) կը կապէ Մերձաւոր Ասիոյ հիմնախաւին եւ կը կարծէ (տես էջ 258-260) թէ անոնք ժառանգորդներ են Սուբարիներու եւ Խարրի-Միտանիներու մշակոյթին եւ շարունակողները անոնց գործին (նոյն էջ 276)։ Այս տեսութիւնը գրեթէ կը հաստատէ Տաշեան (ՀԱ. 1934 էջ 30) ժխտելով անոնց Կովկասեան եւ Հնդեւրոպեան ծագումը։ Հետեւաբար Ուրարտեանք եւս որոնք այնքան պատկառելի ուժ մը կազմեցին Հայաստանի մէջ, ցեղով չէին տարբերիր Կապադովկիոյ բնակչութենէն։

Քր.է առաջ ԺԲ. դարուն սկիզբը պատահած «ծովաժողովուրդներու» մեծ գաղթաշարժը, որ հիմնովին կը փոխէր Մերձաւոր Արեւելքի բնակչութեան նկարագիրը եւ գերիշխան կը դարձնէր Հնդեւրոպական ցեղերը, կերպով մը կուտար Հայաստանի եւ Կապադովկիոյ բնակչութեան ինքնորոշում, որքան որ ալ անոնք իբր ցեղ նոյն արմատէն ըլլային։

Այս երկար վերիվայրումներուն շրջանին, որ ԺԲ. դարէն կ'սկսի, Փոքր Ասիան՝ Պալքաններէն ընդունեց Թրակեան-Փռիւգեան գաղթականութիւն մը՝ որմէ միայն մաս մը՝ Մոսքերը մտան Հայկական բարձրաւանդակին հարաւ-արեւմտեան կողմերը Զ. դարուն, վասնզի Խալդ-Ուրարտեանք դեռ կը տոկային արտաքին յարձակումներու։

Բայց Թ. Ը. Է. դարերուն իրարու յաջորդող նոր արշաւանքները, մասնաւորապէս Կիմմերեան-Սկիւթական (Շակ), հիմէն ցնցեցին այս բարգաւաճ պետութիւնը եւ ճամբայ բացին Հայաստանի արեւմտեան կողմը սպասող Փռիւգեան ցեղերուն (Բրոֆ. Խաչատրեան Հայաստանի Սեպ. Տրջ. Պատմ. էջ 276)։

Այս ընդհանուր խառնաշփոթութեանց միջոցին ուր ազգեր ազգերու վրայ կ'իյնան, Հայաստան մտած ըլլալ կը թուին թէ՛ արեւելքէն եւ թէ՛ արեւմուտքէն հնդեւրոպական տարրեր։

Ը. դարուն Մարաց արշաւանքին հետեւանօք Հայաստան մտան «Արք աշխարհին Arman» որ կը գտնուէր Ուրմիոյ լիճին շուրջը(1) (Տաշեան, ՀԱ. 1934 էջ 30)։

(1) Այս վարկածով կը քանդուի այն տեսութիւնը թէ Արմէններ եւս կը գտնուէին Վոսփորէն եւ Տարտանէլէն Փոքր Ասիա խուժող Թրակեան-Փռիւգական ժողովուրդներու հետ, եւ անոնց հետ բնակակից ըլլալէ յետոյ Փռիւգիոյ եւ Կապադովկիոյ մէջ՝ անցած են Հայաստան։

Ասոր համար Արմանիա, Արմինիա եւայլ միայն ուշ ժամանակի արձանագրութեանց մէջ կ'երեւան եւ Դարեհի ծանօթ երեքլեզուեան արձանագրութեան Բաբելական խմբագրութեան մէջ տակաւին յիշուած է Ուրուաշու (Ուրարտու)՝ բառը (ՀԱ. 1934, էջ 30)։

J. Markwart-ի կարծիքով «Արմէնք» (=«արք Արման աշխարհին») զինուորական գաղութներ էին զորս բերած էին Մարք Արեւելքէն եւ ո՛չ թէ Արեւմուտքէն, երկրին տիրակալութիւնը ապահովելու համար։

Մարք այդ խաղաղ թափանցումը կամ Ամէններու պէս Իրանեան ցեղեր բնիկ ժողովուրդներուն մէջ զետեղելու քաղաքականութիւնը, գործադրած են Կապադովկիոյ մէջ ալ, որով հոն ալ կատարուած է նման ցեղախառնում մը, նման Հայաստանի մէջ կատարուածին։ Այս կարգին կրնանք յիշել նաեւ Կիմմերները եւ Սկիւթացիք որոնք Ը. եւ Է. դարերուն կը թափին դէպի հարաւ եւ արեւմուտք, կ'իջնան Իրան, եւ կեդրոնական եւ հարաւային Հայաստանի վրայէն Փոքր Հայք եւ Կապադովկիա։

Ամէն տարակոյսէ դուրս է թէ անոնցմէ մաս մըն ալ Հայ ազգին մէջ ձուլուած է։

Իսկ գալով այն հին եւ բաւական տարածուած եւ շատերէ ընդունուած վարկածին թէ հնդեւրոպական Արմէնները Արեւմուտքէն մտած են Հայաստան, գաղթելով Փռիւգիայէն կամ այսպէս կոչուած աշխարհէն եւ հետեւաբար բնակած են մօտաւորապէս Անկիւրիայէն մինչեւ Ալիսի շրջանը եւ Ալիս գետն ի վեր նախ անցած են Արգէոսի շրջակայքը եւ յետոյ մղուած՝ մինչեւ Ալիսի աղբերակունքը (տես Jos. Markwart. «Le Berceau des Arméniens.» Revue des Etudes Arméniennes. Tome VIII. face 2. 1928, էջ 211–232), եթէ ճշդուած եւ վերջնական դրոշմ ստացած ըլլար, այն ատեն Արգէոսի շրջակայքը, աւելի կանուխ եւ թերեւս մէկ երկու դարով աւելի առաջ բնակուած պիտի ըլլար արդի Հայերով քան Հայաստանը, եւ Կապադովկիոյ ու Հայաստանի բնակչութեան միջեւ նոր ցեղակցական կապ մը հաստատուած պիտի ըլլար։

Սակայն այս վարկածը հակառակ շատ տարածուած ըլլալուն, չունի վաւերական ու վերջնական հանգամանք։

Ասոր գլխաւոր փաստը կամ աւելի ճիշդ հիմը հանդիսացած են Հերոդոտոսի (484-425) այն խօսքը թէ Փռիւգացիք եւ Արմէնք համացեղ են (Հերոդոտոս Ա. 171) եւ թէ Հայք «հատուածս Փռիւգացւոց» են, եւ Դիոնիսիոս Ալիկառնացիի այն վկայութիւնը թէ Արմէնք համալեզու են Փռիւգացւոց հետ եւ թէ Քսերքսէսի՝ Յունաց դէմ մղած պատերազմին ատեն, պարսիկ բանակին մէջ կը գտնուէին այս երկու ժողովուրդները մէկ հրամանատարութեան տակ եւ նոյն տարազը կը կրէին։

Նոյնպէս Եւդոքսիոս, ուրիշ յոյն հեղինակ մը, իր աշխարհագրութեան մէջ, կը հաստատէ թէ «Հայք սերունդ են ի Փռիւգացւոց եւ լեզուաւ ի բազումս մերձաւորք» կամ «բազմօք Փռիւգերէն վարին» (տես Տաշեան Ուսումն Դասական Հայերէն Լեզուի, էջ 130)։

Ստրաբոն (ԺԱ. 503 եւ 530) եւս անշուշտ յունական ինքնահաւանութեան ստեղծագործած մէկ աւանդութեան արձագանգը կ'ըլլայ Արմէնները սերունդը նկատելով Արմենոս անուն քաջի մը, որ Թեսալիոյ Արմէնիա քաղաքէն էր եւ Արգոնաւորդաց հետ ծովէն անցած էր կող-



քիս եւ անդի Հայաստան զոր աշխարհակալած եւ իր անունով Արմէնիա կոչած էր։

Նկատելի է որ այս զրոյցը Ստրաբոն ինքն ստեղծած չէ այլ իբր թէ առած է Մեծն Աղեքսանդրի պատմագիր՝ երկու Թեսալացիներէ՝ Կիւրսիլոս (Kyrsilos) Ֆարսալացիէն եւ Միտիոս (Medeios) Լարիսացիէն, որոնք կ'ապրէին 300 թուականէն (Քր.է առաջ) յետոյ Անտիոք՝ Սելեւկոս Նիկատոր Ա.ի արքունիքը եւ որոնք ըստ այլ տեսութեան մը, Ալէքսանդր Մեծի բանակին հետ Հայաստանէն անցած էին (Համեմ. Տաշեան, Ուսումն, էջ 131 եւ J. Markwart. REA. T. VIII. face. 2, էջ 213)։

Ասոնցմէ Միտիոսի համար ըսուած է թէ Ալէքսանդրի ամէնէն մտերիմ բարեկամներէն մին էր եւ կը պատկանէր իր ծագումով Թեսալական ազնուականութեան (J. Markwart. նոյն էջ 214) եւ շատ հաւանօրէն արձագանգ եղած՝ վաղօրօք գոյութիւն ունեցող իր ազգային ինքնասիրութիւնը գգուող զրոյցի մը կամ ցեղային մեծամտութեամբ մը ինքն իսկ ստեղծած է, օգտուելով մի քանի ի Թեսալիա, ի Բիւթանիա եւ ի Փոքր Հայք գտնուած նմանաձայն վայրերու անուններէն (Համեմ. մանրամասնութեանց համար Տաշեան, Ուսումն. էջ 131–133 եւ J. Markwart. նոյն)։

Յունական այս զրոյցներուն կարծուած է թէ ոյժ կուտայ Յովհաննէս կաթողիկոսի մէկ յիշատակութիւնը որ Յաբէթի վեցերորդ որդւոյն Թիրասի —որ նախահայրն էր Թրակացւոց— երկու որդիներուն Ասքանազի եւ Թորգոմի կ'ընծայէ մեր երկրին տիրապետութիւնը (տես տպ. Երուսաղէմ 1867 էջ 17–19) եւ Կորիւնի մեր ազգը Ազքանազեան կոչելը(1) եւ Ս. Գրոց մէջ Երեմեայի մէկ հատուածին (ԾԱ. 27) Եբրայական բնագրին մէջ Արարատի, Մինիի եւ Ազգանազի(2) իբր սահմանակից թագաւորութիւններ յիշատակուիլը, եւ Եզեկիելի (ԻԷ. 14 եւ ԼԸ. 6) Հայ թարգմանութեան «Թորգոմայ տուն»(3) բացատրութիւնը, որոնք դժբախտաբար հեռու են անժխտելի փաստեր ըլլալէ, եւ կը մնան միշտ խնդրական։

Դարագաշեան (տես Քնն. Պատմ. Ա. էջ 7–8) տակաւին շատ կանուխ ծառացած է հեղինակաւոր եւ երեւելի հնաբաններու դէմ, որոնք Հայոց կ'ուզէին Փռիւգեան ծագում տալ եւ շատ ճիշդ դատողութեամբ

---

(1) Ազքանազը՝ կը նոյնացնեն Ասքանիայի կամ Ասկանիայի հետ, (տես Տաշեան Ուսումն. էջ 134 եւ 128) որ կը գտնուէր մօտաւորապէս Փռիւգիոյ մէջ։

(2) Ընթերցումը խնդրական համարած է Տէլիչ իրաւամբ (տես Ուսումն. էջ 134)։

(3) Նոյնպէս ընթերցումը խնդրական, Քիպերտ եւ Տէլիչ կ'ըսեն թէ Թոգարմահ պէտք է ըլլայ համապատասխան բեւեռաձեւ արձանագրութեանց Թուլգարիմուին որ Հայաստանի հարաւ-արեւմուտքը կը գտնուէր (տես Ուսումն. էջ 134)։ Բրոֆ. Խաչատրեան Թոգորման, (=Թորգոմ), Գամէրը (=Գամիրք) եւ Ազգանազը սերտօրէն կապուած ցոյց կուտայ Մոսք-Մոսոքներու հետ, ըստ Աստուածաշնչական տեղեկութեանց (Հայ. Սեպ. Գրչ. Պատմ. էջ 245)։

մը գիտել տուած է թէ հին պատմիչները «Փռիւգայի» ըսելով կը հասկնային Փոքր Ասիոյ Հնդեւրոպական կամ Արիական ցեղերը, ինչպէս էին Մուշքերը, որոնց միջեւ Հայաստան հասած ըլլալը ամէն տարակոյսէ դուրս է։

Հետեւաբար աւելի հաւանական է ենթադրել թէ յունական զրոյցները և Ցովհաննէս կաթողիկոսի աւանդածը, ինչպէս Ս. Դրոյ տեղեկութիւնները որոնք Հայոց Թրակեան-Փռիւգեան ծագում մը կը վերագրեն, աւելի կը պատշաճին Մուշ-Փռիւգներու քան Արմէններու որոնք ինչպէս տեսնուեցաւ Արեւմուտքէն Հայաստան չեն եկած։

Սակայն զարմանալի է որ Jos. Markwart հաւատալ կը թուի այս տեսութեան և իբր նոր և հնագոյն փաստ այս վարկածին կը բերէ Հոմերոսի Իլիականին մէջ յիշուած Արիմները (Arimoi) (որոնք կը նկատէ Հայեր (=Արմէն»ներ) որոնք կը բնակէին Կիլիկիա՝ հրաբուխի մը մօտ, որ միայն Արգէոսը կրնար ըլլալ (REA. T. VIII. fsc. 2, էջ 215–216)։ Այսպէս կը կազմէ Ալիսէն Արգէոս և անկէ դէպի Ալիսի այբերակունքը ենթադրական ուղեգիծ մը։

Հայոց Կապադովկիայէն անցքին մէկ ուրիշ ապացոյցը նկատուած է, չեմ գիտեր ինչքան արժէքով, Լէմանի (Lehmann Haupt.) այն յայտնութիւնը թէ Մինուասի արձանագրութեան մէջ՝ որ գտնուած է Կապադովկեան սահմաններուն վրայ՝ յիշուած է Urmeni, Armeni անունը, որով իբր թէ կ'ապացուցուի թէ Արմէնները այդ շրջանին —Թ-Ը. դար Քս.է առաջ— կը գտնուէին Եփրատի արեւմտեան կողմը, արդի Մալաթիոյ շուրջը, Կապադովկիա (Գէորգ Մեսրոպ. Հայաստանի աշխարհագրական, պատմական, ցեղագրական, վիճակագրական և մշակութային տեսակէտով, Կ. Պոլիս, 1919, էջ 14)։

Հ. Տաշեան կը մտածէ թէ Հայ ազգը կազմող այլեւայլ տոհմերէն մին կամ միւսը կրնան Արեւմուտքէն եկած ըլլալ, ժամանակ մը Փռիւգիա բնակած ու անցած Փոքր և Մեծ Հայք, բայց անհաւանական կը գտնէ այն կարծիքը թէ ամբողջ Հայ ժողովուրդը Փոքր Հայք բնակած ըլլայ և Մեծ Հայք անցած կամ ստիպուած անցնելու՝ Գամրաց (Կիմմերացւոց) արշաւանքին հետեւանօք (ՀԱ. 1934, էջ 28)։

Հ. Տաշեան այս մասին կը բերէ զօրաւոր փաստ մը։ Անիկա կ'ըսէ թէ Կիմմերացւոց արշաւանքը եղած է Արեւելքէն դէպի Արեւմուտք, և անկարելի էր, որ Հայ ժողովուրդը մղուէր ճիշդ հակառակ ուղղութեամբ Արեւմուտքէն դէպի Արեւելք։ Հետեւաբար իր տեսութեամբ «Հայք թէ ի Փոքր եւ թէ ի Մեծ Հայս կը նստէին անուանս՝ ինչպէս Գամրաց արշաւէն ետքը՝ նոյնպէս ապահովապէս անկէ յառաջ: Բայց կարելի է որ Հայոց այն մասը՝ որ Հալիսի Արեւելքը կը բնակէր, մղուած ըլլայ անով դէպի Արեւմուտքն Հալիսի, ի Փռիւգիա, ուր ժամանակաւ ձուլուեցան: Ուստի կարելի է որ յոյն աւանդութիւնն նաեւ (այսպիսի) իրական մ'ունենայ»: (ՀԱ. 1934, էջ 28)։

Առով Հայ-Փռիւգեան յարաբերութիւնները կը մեկնուին տարբեր կերպով մը, փոխանակ Հայ-Արմէնները՝ իբր ծովածողովուրդներու մաս, ենթադրելու Թրակիայէն Փոքր Ասիա արշաւած և տեւեն մը Փռիւգիա կանգ առնելէն յետոյ մտած Հայաստան, անոնք կուգան Փռիւգիա Հայաստանէն, այսինքն Արեւելքէն դէպի Արեւմուտք շարժելով։



Երկու պարագայի մէջ ալ անխուսափելիօրէն պէտք է ընդունիլ թէ Հայերը անցած են Կապադովկիայէն։

Ինչ որ ալ ըլլայ գիտութեան վճիռը, նոր յայտնութեանց և հնագիտական գիւտերու լոյսին տակ, ամէն պարագայի մէջ ինչպէս տեսնուեցաւ անժխտելի իրողութիւն մըն է թէ ցեղային կապակցութիւն մը միշտ գոյութիւն ունեցած է Հայաստանի և Կապադովկիոյ բնակչութեան միջեւ և երկու երկիրներու մէջ ալ կատարուած են նոյնաժամանակ ցեղերու միախառնումի միօրինակ աշխատանքներ։

Այս խառնուրդ ժողովուրդները հետզհետէ տեղացի դառնալով ստացան իրենց ինքնուրոյն նկարագիրները և առանձնայատկութիւնները։

Սակայն մինչեւ մասնաւոր նկարագիրի մը ստացումը կարելի չէ որոշապէս ըսել թէ երկու երկիրներու բնակչութեան ցեղային առընչութիւնը ինչ եղած է, և Եփրատի երկու եզերքներու բնակիչները իբր ցեղ ինչ տարբերութիւններ ունեցած են։

Միայն անժխտելի իրողութիւն է որ ԺԲ. դարուն (Քր.է առաջ) խուժող ժողովուրդները Հաթերը վանեցին մինչեւ Եփրատ և հիւսիսային Ասորիք և թերեւս նոյնիսկ մինչեւ Հայաստան — ուր անոնք ստացան Կատառնացի անունը — և կործանած պետութեան աւերակներուն վրայ իրենք տեղաւորուեցան, սակայն չկրցան տեւական և զօրաւոր անկախ պետութիւններ կազմել։

Ասոնցմէ ամէնէն զօրաւորը՝ Մուշքերը որոնք տիրած էին Հայկական բարձրավանդակին մէկ մասին, Ասորեստանի մեծ ուժին առջեւ ընկճուեցան։

Նշանակելի է որ Կապադովկիոյ մէջ ապրող զանազան ժողովուրդներու կարգին Հերոդոտոս և Ստրաբոն կը յիշեն Մատիեններն որոնք Հայաստանի բնիկ ժողովուրդ մըն էին, և Մարական բանակներու հետ եկած էին Կապադովկիա (տես վերը) և Մուշքերը և Կատաոնացիքը՝ որոնք մինչեւ Հայաստանի Եկեղեաց գաւառը (վերին Եփրատ) և նոյնիսկ Կարին եւ Դերջան տարածուած էին և որոնք սակայն իր ժամանակը Հայերէն նուաճուած, միեւնոյն լեզուն կը խօսէին։ (Ստրաբոն, ԺԱ. 14, 5)։

Ահա Ստրաբոնի խօսքերը. «Արմէններն Արտաքսիասի եւ Զարիադրիսի օրով (Բ. դար Քս.է առաջ) շրջակայ ազգերէն սահմանակից տեղեր գրաւելով՝ ընդարձակեցին իրենց սահմանները... Իբերներէն՝ Պարիադրիս լեռնաշղթայի լեռնակողմը, Խորձենք ու Կուր գետի միւս կողմը գտնուող Գուգարք, Խալիւբներէն ու Մոսինոյքներէն՝ Կարինիտիս (=Կարին) ու Դերկսինէ (=Դերջան), որոնք Փոքր Հայքի սահման երկիրներ կամ (թերեւս) նոյնպէս անոր մասերն են, Կատաոններէն՝ Ակելիսինէ (Եկեղեաց) ու Անտիտաւրոս երկիրը»:

Զափազանց նշանակելի է որ Մոսինոյքներու գրաւած երկիրները Փոքր Հայքի սահման երկիրներ կամ թերեւս անոր մասերը կը համարուին, որով կ'ստեղծուի շղթայ մը Կապադովկիա-Փոքր Հայք-Բարձր Հայք, երբեք դէպի արեւելք տարածուող շրջաններու մէջ Փռիւգ-Մուշքերու գոյութիւնը հաստատելով։

Եթէ պատմական ստուգութիւն ունի Ստրաբոնի այս հաւաստումը, — ինչ որ անժխտելի է — ասիկա կը նշանակէ թէ ցեղային համանման նկարագիր ունեցող ժողովուրդներ հաւասարապէս բնակած են

*Հայաստանի և Կապադովկիոյ մէջ այդ կերպով մը փոխանցման շրջանին մէջ, որ Թ. դարէն մինչեւ Է. դար կը տեւէր։*

*Երկու երկիրներն ալ ներխուժած են նոր տարրեր, որոնք դէպի հարաւ և դէպի արեւելք Եփրատէն անդին չեն կրցած անցնիլ որչափ ատեն որ Ասորեստան զօրաւոր էր, սակայն վերջապէս ան ընկճուեցաւ է. դարուն* (626 *Քս.է առաջ) երբ Կիմմերեան և Սկիւթական (Շակ) արշաւանքները Մերձաւոր Ասիոյ մէջ ամէն բան տակնուվրայ ըրին, և ջնջեցին Ասորեստանեանց գերիշխանութիւնը։ Այս նոր տակնուվրայութիւնը առիթ պիտի ընծայէր Մարական պետութեան որ իր գերիշխանութեան ենթարկէր բոլոր Մերձաւոր Արեւելքը, որ տեւական մը քաոսային վիճակի ենթարկուած էր և կը կարօտէր իսկապէս նոր կազմակերպութեան մը, որ անոր տուաւ Մար-Պարսիկ պետութիւնը, որուն լուծին ենթարկուեցան Հայաստան և Կապադովկիա և հզօր քաղաքակրթութեան մը ներգործութիւնը կրեցին, նոյն ու նման վարչութեամբ մը կառավարուելով։*

*Մինչև Մետական կամ Մարական գերիշխանութեան շրջանը՝ ո՛չ Հայաստան և ո՛չ ալ Կապադովկիա անունով աշխարհագրական որոշ սահմանագծումով երկիրներ գոյութիւն ունէին։*

*Բաւական ուշ է որ «Հայաստան» անունը աշխարհագրական քիչ շատ հաստատուն գաղափար մը կը դառնայ և «Կապադովկիա» անուանունով ճանչցուիլ կ'սկսի Փոքր Ասիոյ մէկ կարեւոր մասը։*

*Այդ շրջանին Ալիս գետը կը ներկայացնէր Լիւդացւոց և Մետացւոց սահմանը, և Կապադովկիա անունով աշխարհամաս մը գոյութիւն չունէր։*

*Այս մասին ապացոյց կուտայ Հեկատէ աշխարհագիրը (Զ. դար Քս.է առաջ) որ չի ճանչնար Կապադովկիա անունով աշխարհ մը, վասնզի* Հայք *և* Փռիւգացիք *ուղղակի դրացիներ էին (տես* Z. Khanzadian, Rapport sur i'Unité Géographique de l'Arménie, Atlas Historique, Paris 1920 2e carte)։

*Տաշեան* (Ուսումն. *էջ* 131) *նոյնը կը հաստատէ ընդունելով որ Փռիւգացիք մինչև Գամիրք (Կապադովկիա) տարածուած էին և Հայք եւս գոնէ մասամբ կամ իրենցմէ մի քանի տոհմեր՝ երբեմն այդ կողմերը բնակութիւն հաստատած էին վաւերականօրէն, ինչ որ միեւնոյն ատեն Կապադովկիոյ մէջ երկու ազգերուն՝ Փռիւգացւոց և Հայոց չփման գալը կը հաստատէ։*

*Ասոր գլխաւոր փաստը կուտան Քս.է առաջ Ե. դարէն Փռիւգեան գիրերով արձանագրութիւնները, որոնք մասնաւորապէս Կապադովկիոյ հիւսիսակողմը (Իւյիւկ) գտնուեցան Շանդրի խուզարկութեամբ, վասնզի անոնք կը հաստատեն թէ Պափլագոնացւոց և Գամրաց աշխարհներուն մէջ գոնէ Փռիւգացիներու հաստուածներ կային*(1)։

*Հերոդոտոս որ մօտաւորապէս Քրիստոսէ իբր* 450 *տարի առաջ պէտք է գրի առած ըլլայ իր գործը, հակառակ անոր որ Հայոց բնակավայրը կը փոխադրէ քիչ մը աւելի արեւելք դարձեալ կ'անգիտա-*

---

(1) *Կրիչմեր կը կարծէ թէ Հայերը զետեղած են այդ Փռիւգական արձանագրութիւնները երբ դեռ փռիւգախօս էին (տես Տաշեան,* Ուսումն. *էջ* 164 – 165)։



*նայ Կապադովկիոյ գոյութիւնը* (Z. Khanzadian, *նոյն*, 3e carte)։

*Հերոդոտոսի (Ե.* 49 – 52) *համաձայն Հայերը Եփրատի արեւելեան եզերքը անցած էին և կը բնակէին Մատիենէի և Կիլիկիոյ մէջտեղ, և Եփրատէն դէպի արեւելք Հայաստան կը տարածուէր մինչև* 56 *ու կէս փարսախ։*

*Նշանակելի է որ Հերոդոտոս (Դ.* 92) *Հայերը կը դնէ Դարեհի* 13*րդ սատրապութեան մէջ, Պակտիացիներու և ուրիշ դրացի ազգերու հետ՝ մինչև Պոնտոս*(1)։

*Դարեհի և Քսերքսէսի արձանագրութիւնները՝ կը հաստատեն ինչ որ Հերոդոտոս կ'ըսէ։ Հայք* Armենն *անունով կը յիշուին իբր արեւմտեան եօթներորդ նահանգը, զանգիկ կրօնքով հարկատու ազգաց շարքին։ (Լասսէն, Րիտտէր, նաև Գաթըրճեան,* Տիեզ. Պատմ. *Ա. հատ. էջ* 341 *և* 351, *Դարագաշեան* Բնն. Պատմ. *Ա. էջ* 66),

*Արդ, նկատելով թէ Հերոդոտոս այլուր (Ա.* 72) *կը հաւաստէ թէ Ալիս գետը կը բխի Հայաստանի լեռներէն, կարելի է հետեւեցնել թէ Դարեհի ժամանակ* (522 – 486) *և Հերոդոտոսի ատեն* (484 – 425 *Քս.է առաջ) Հայոց բնակութեան արեւմտեան սահմանները կը կազմէին Մելիտինէի երկիրը՝ հարաւէն՝ և Փոքր Հայքը՝ հիւսիսէն՝ Ալիսի վերին հովիտներուն մէջ։*

*Նկատելի է որ երբ Փոքր Ասիա եւս կ'ենթարկուէր Պարսից լուծին, ամբողջութեամբը կը կազմէր սատրապութիւն մը (Գ. սատրապութիւն) որուն կեդրոնը կ'ըլլար Դասկիլիոն, ուր նստող սատրապը իր իշխանութեան տակ ունէր Սպիտակ Ասորիքը, Մատիենացիքը, Փռիւգացիքը, Մարիատինցիքը և Բիւթանացիքը։*

*Ասոնցմէ Փռիւգացիք հաւանօրէն կը ներկայացնէին այս ազգերուն մէջ ծանօթագոյնը և թերեւս գերիշխողը, հետեւաբար այս սատրապութիւնը ճանչցուած է իբր Փիւռիգիա, հակառակ անոր որ իր բնակչութեան մէջ ունէր* Սպիտակ Ասորիները, *որոնք, ինչպէս տեսնուեցաւ անուն մըն էր որ յոյներէն կը տրուէր վերջէն Կապադովկիա կոչուած երկրին բնակիչներուն։*

*Արդ, եթէ Դասկիլիոնը կեդրոն ունեցող սատրապութեան ենթակայ երկիրներու բնակչութեան ամէնէն կարեւոր մասը Փռիւգացիք և Մելիտինէ (Մալաթիա) նստող սատրապին իշխանութեան ենթարկըւած զանազան ազգերուն մէջ ամէնէն նշանակելին հանդիսացողը Հայերն էին, արդարև Փռիւգացիք և Արմէնները կրնային իրարու դրացի նկատուիլ, քանի որ իրենց մեծամասնութեամբը այս երկու ցեղերը այդ երկու սատրապութեանց կրնային տուած ըլլալ իրենց անունը և այսպէս ստեղծուած՝ Փռիւգիա և Հայաստան կը դառնային իրարու դրացի երկիրներ, իբր աշխարհագրական միաւորներ, թէև Ալիսէն Եփրատ տարածուող երկիրները բնակուած ըլլային զանազան մանր ցեղերով, ինչպէս էին Հերոդոտոսէն յիշատակուած՝ Մատիեններ և Ստրաբոնէ յիշատակուած Մոսքերը, Կատայոնացիները և այլն։*

---

(1) *Աւելորդ չըլլայ նշանակել թէ Պերսեպոլսոյ արձանագրութեանց մէջ Հայք* 24 *նահանգներէն* 7*րդ.ը կը կազմէին։ Նաքշի-Ռուստամի արձանագրութեան մէջ* 28 *նահանգներէն* 19*րդ.ը և Պեհեստունի արձանագրութեան մէջ* 23 *նահանգներէն* 11*րդ.ը։*

*Այս մեծ միաւորները որոնք տեսակ մը արուեստական միութիւններ են, կ'ստորաբաժնուին և Փռիւգիա և Հայաստան առաջին անգամ հաւասարապէս կ'ունենան Մեծ ու Փոքր անուններով երկուական բաժանումներ, հաւանօրէն առաջ քան* Կապադովկիա *անունով երկրի մը կազմուիլը և կրկնակ Մեծ և Փոքր Փռիւգիաներուն անջատումը։ Նոյնիսկ այս շրջանին է որ կը կազմուի նաև Կապադովկիան, անջատուելով Դ. սատրապութենէն, որուն ստորաբաժանումները հետզհետէ պիտի ստանային տեղական մասնաւոր կոչումներ։*

*Հերոդոտոսէն Քսենոփոն սահող ժամանակամիջոցին մէջ Դ. սատրապութեան երկիրները կը բաժնուին որոշ երեք շրջաններու,* Հելլեսպոնդեան Փռիւգիա *(յետոյ* Բիւթանիա *պիտի դառնար),* Մեծ Փռիւգիա, *և* Կապադովկիա *որ չունէր անձուկ իմաստ մը, վասնզի Տաւրոսէն մինչև Սև Ծով կը տարածուէր։*

*Պարսիկները Կապադովկիա անունով կը ճանչնային այդ շրջանին Ալիսի և Եփրատի միջև տարածուած երկիրը։ Անիկա Ալիսով կը բաժնուէր Փռիւգիայէն և Պափլագոնիայէն և Եփրատով՝ Հայաստանէն։ Եւ ինչպէս ըսի, Կապադովկիա կոչումը պարսկական էր, և տըրուած յոյներէ* «Սպիտակ Ասորիք» *կոչուած ցեղէն բնակուած աշխարհամասին, և կարելի է ըսել թէ նոյնիսկ շատ աւելի ուշ՝ նուազ գործածական Յունաց մէջ։*

*Ասոր զօրաւոր փաստը կրնայ համարուիլ Երատոսթենէսի* (Eratusthènes) *(Քրիստոսէ իբր 200 տարի առաջ) և Հիփփարքոսի* (Hipparque) *(Քրիստոսէ իբր 159 տարի առաջ) քարտէսները (տես* Z. Khanzadian, *նոյն, թ. 4 և 5 աշխարհացոյցները) որոնց վրայ դարձեալ չենք հանդիպիր Կապադովկիա անունին*(1), *թէև կրնայ ենթադրուիլ թէ* Կապադովկիա *անունը գործածուիլ սկսած էր առանց տակաւին ժողովրդականացած ըլլալու։*

*Հետեւաբար Փռիւգիա հնագոյն ժամանակներու մէջ անմիջական դրացին էր Հայաստանի և Հայ և Փռիւգացի ցեղերը՝ թերեւս իրարու հետ խառնուած էին, ինչ ինչ տեղեր։ Այդ վայրերուն մէջ առաջինը ապահովաբար յետոյ Կապադովկիա անունը ստացած երկիրն էր ուր Հայ ցեղը և Փոքր Ասիական այն ցեղերը որոնք երբեմն Փռիւգացի կը կոչուէին և ապա ստորաբաժնուեցան զանազան ուրիշ մանր ազգերու, իրարու չփման կուգային կամ խառն կ'ապրէին։*

*Նոյնիսկ կարելի է ընդունիլ թէ Փռիւգացի կամ Փռիւգիա բնակող տոհմեր — ինչպէս էին Մոսքերը —* J. Markwart*ի գծած ուղեգիծով Արեւմուտքէն Հայաստան մտած ըլլան Արգէոսի ստորոտէն անցնելով, և այս մասնակի տեղափոխութիւնը ծնունդ տուած ըլլայ Յունական գրոյցներուն, որոնք բոլորովին անարձագանգ չեն մնացած Հայ մատենագրութեան մէջ։ Յովհաննէս Պատմագիր կաթողիկոսի ծանօթ հատուածէն զատ Հայ բանաւոր գրականութենէն Խորենացիով մեզի հասած կտոր մը ցոյց կուտայ թէ Հայ ժողովուրդին մէջ դարեր յետոյ դեռ կենդանի մնացած էր Կապադովկիայէն հատուածներ Հայաստան եկած ըլլալու աւանդութիւնը։*

*Դիտելի է նոյնիսկ որ այդ աւանդութիւնը ժամանակագրական աւելի կամ նուազ ճշդութեամբ կը սահմանէ այդ շարժումին առենը։*

*Արդ, ըստ Եղիշէ Պատրիարք Դուրեանի* «պատմական երգերու մէջ, որոնք ժամանակագրօրէն յայտնի բուական մը կը վերաբերին, գրեթէ առաջինն է այն պատառիկը՝ որ Երուանդ Սակաւակեացի օրով (Զ. դար, Ն. Ք.) Կապադովկիայէն գաղթող Վարդգէսի մը նուիրուած է»: *(տես Եղիշէ Պատր. Դուրեան,* Պատմութիւն Հայ Մատենագրութեան, *Երուսաղէմ,* 1933, *էջ* 259-260)։

*Ահա այդ տողերը.*

«Հասուած գնացեալ Վարդգէս մանուկ
Ի Տուհաց գաւառէն զՔասաղ գետով,
Եկեալ նստեալ զՇրէշ բլրով
ԶԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի»:

*Եղիշէ Պատրիարք Դուրեան* «Տուհաց գաւառ»*ը կը մեկնէ Կատպատուխա (= Տուհա), կողմն Տուհաց = Կապադովկիա, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 47)։*

*Այս մեկնութեամբ որ գրեթէ անժխտելի է, կը տեսնուի թէ Հայ ժողովուրդին մէջ պահուած էր Խորենացիին իր պատմութիւնը գրի առած պահուն իսկ, երգեր և աւանդութիւններ, որոնք կը հաստատէին գէթ մաս մը Հայերու Կապադովկիայէն կամ այս ճամբով Հայաստան եկած ըլլալը կամ Կապադովկիոյ և Հայաստանի միջև սերտ յարաբերութեանց գոյութիւնը, որ շատ հասկնալի է, իբր դրացի և ցեղակից ժողովուրդներէ բնակուած երկիրներ։*

*Տեսանք արդէն թէ Հայաստանի բնիկ Մատիեններ Կապադովկիա և Կապադովկիոյ բնակիչ Մոսքերը և Կատաւոնացիք մինչեւ Հայաստանի սիրտը՝ Կարին, Դերջան և Եկեղեաց գաւառ տարածուած էին և Հայոց հետ ձուլուած, հայախօս դառնալով (տես վերը, էջ 124 – 125 ինչպէս նաև էջ 149)։*

*Նոյնը կարելի է ըսել նաև Հայերու համար որոնք Արեւմուտք մղուած են Կիմմերեան արշաւանքին առեն և նոյնիսկ առաջացած մինչեւ Փռիւգիա ինչպէս տեսնուեցաւ։*

*Ասոնք ալ Կապադովկեան երկիրին մէջ տեղացիներու խառնուած ու անոնց հետ ձուլուած են։*

*Այնպէս որ Հայերը իբր ցեղ ո՞ր սահմաններու մէջ կ'ապրէին և Կապադովկիացիք իբր ուրոյն ազգ աշխարհագրական ո՞ր որոշ սահմանին մէջ սեղմուած էին, ճշդել գրեթէ անկարելի է։ Եփրատը որ իբր սահմանագիծ ընդունուած էր Հայաստանի արեւմտեան կողմին համար, վճռական իրականութիւն մը չէր և Եփրատէն արեւմուտք կ'ապրէին նաև այնքան շատ թուով Հայեր որ այդ երկիրներէն մաս մը յետոյ Փոքր Հայք անունը առաւ, և եթէ ոչ Հայաստան գէթ հայաբնակ երկիր մը նկատուեցաւ։*

*Ուստի չափազանց դժուար է Հայոց և Կապադովկիացւոց համար գծել ցեղային ճշգրիտ սահմանագիծ մը։*

Հայաստան *կամ* Արմենիա *կոչուած երկիրը իբր բնակավայր Հայ ազգին, չափազանց յարափոփոխ սահմաններ ունեցած է։*

---

(1) *Վարանմամբ այս հաւաստիքը կուտամ, վասնզի կասկածն ունիմ թէ այս պարագան իբր իր թէզին հետ առնչութիւն չունեցող հարց մը անտեսած ըլլայ, Գ. Զ. Խանզատեան, մանաւանդ որ ծաւալով շատ փոքր էին այդ երկու աշխարհացոյցները։*

Հայաստանի ո՛չ աշխարհագրական, ո՛չ պետական և ո՛չ ալ ցեղագրական սահմանները ոչ մէկ դարու մէջ հաստատուն և անխախտ հանգամանք մը ունեցած են։ Անկարելի է հետեւաբար գծել Հայոց Մայր-Հայրենեաց անփոփոխելի սահմանները։ Մանաւանդ նկատելի է թէ Հայոց երկրին անմիջական դրացի կարգ մը աշխարհամասերուն մէջ Հայոց բնակութիւն հաստատելը այնքան հին է որ չէ կարելի որոշել թէ անոնք պէտք է՞ Մայր-Հայրենիք նկատել թէ գաղութներ։ Եթէ կարելի ըլլար ճշդել թէ դրացի երկիրները Հայաստանի հետ միեւնոյն ատեն հայաբնակ դարձած են բնական է թէ դիւրին պիտի ըլլար ցեղագրական տեսակէտով ճշդել հայաբնակ աշխարհներու բնական սահմանը և անկէ դուրս մնացած աշխարհները նկատել գաղութներ, առանց ուշադրութիւն ընելու Հայկական տէրութեանց յարափոփոխ սահմաններուն, որոնք կրնային միշտ փոփոխութեան ենթարկուիլ, առանց ոեւէ ազդեցութիւն ընելու ցեղին հաստատուն բնակչութեան սահմաններուն վրայ։ Հետեւաբար Հայաստանի կարգ մը մերձաւոր երկիրներու մէջ գտնուած հայերուն մասին կարելի չէ որոշ կերպով ըսել թէ բնիկներ ե՞ն թէ գաղթականներ, քանի որ Հայաստանի աշխարհագրական ըմբռնումին դասականացումէն առաջ եթէ անոնք ցեղին գրաւած տարածութեան մէջ կը գտնուէին արդէն, ներելի չէ զանոնք գաղթականութիւններ համարել։

Մասնաւորապէս Հայաստան անունով ծանօթ աշխարհին արեւմտեան կողմը գտնուած երկիրները անվիճելի սահմանագծումով մը բաժնել չափազանց դժուար է, վասնզի ինչպէս տեսնուեցաւ նոյնիսկ կարելի չէ որոշապէս և վճռաբար ըսել թէ Արարատի ստորոտը տեղաւորուած ժողովուրդները Արգէոսի շուրջը հաստատուած բնակչութենէն տարբեր ցեղի մը կը պատկանէին կամ առաջինը չէր եկած Կապադովկիայէն և երկրորդը Հայաստանէն, այնքան իրարու հետ խառնուած և այնքան իրարու հետ շաղկապուած էր իրենց պատմութեան արշալոյսը։

Ամէն պարագայի մէջ Հայաստանի աշխարհագրական գաղափարին հաստատուն ձև մը առնելէն և Հայ ցեղին բնակավայրը արեւմուտքէն Եփրատով սահմանագծել սովորութիւն դառնալէն յետոյ ալ որոշ է թէ անդրեփրատեան երկիրներու մէջ հայեր կ'ապրէին և այդ հողամասին մէջ Հայոց բազմութիւնն էր պատճառ որ այդ հողամասերը կոչուեցան՝ Փոքր Հայք:

Այս երկիրը որ նախ հազիւ 28,000 քառ. քիլոմէթր էր յետոյ 88,000ի և վերջապէս Յուստինիանոս կայսեր ատեն (Զ. դար Քս.է յետոյ) 138,000 քառ. քիլոմէթր տարածութիւն մը ստացաւ (Լէօ Պատմ. Հայոց էջ 131), և նոյնիսկ իր անունը փոխեց և ստորաբաժնուեցաւ Առաջին Հայք, Երկրորդ Հայք, Երրորդ Հայք և Չորրորդ Հայք կոչումներով նահանգներու, որոնք իրենց մէջ կ'ընդգրկէին եթէ ոչ ամբողջութեամբ գէթ մեծ մասամբ մեր նախնեաց Գամիրք կամ այլոց Կապադովկիա անունով ճանչցած աշխարհամասը։ Դիտելի է սակայն որ Հայ պատմագիրները «Փոքր Հայք» բացատրութիւնը չեն գործածած (տես Անդրէաս վրդ. Ալեքսանդրեան, Պատմ. Ականաւոր Քաղաքին Սեբաստիոյ, 1911, Վենետիկ, էջ 9)։ Վասնզի անշուշտ Հայ ժողովուրդին համար Հայաստանի գաղափարը մի և անբաժանելի էր, որչափ որ ալ իր սահմանները շատ յստակօրէն զատուած չըլլային դրացի երկիրներէն։



Այս իսկ պատճառով հաւանօրէն Հայոց համար Հայաստան էր Եփրատէն դէպի արեւմուտք տարածուած հողերէն կարեւոր մաս մը եւս։ Հերոդոտոս նոյնպէս որոշապէս Եփրատէն Ալիս տարածուած երկիրները Հայաստանի կը միացնէ, իսկ Դարեհ Վշտասպեանի արձանագրութիւնը, այդ միեւնոյն հողերը մաս կը համարէ ԺԳ. սատրապութեան, որուն մէջ էին հայերը։

Եւ աւելի հետաքրքրական է որ երբ այդ սատրապութիւնը երկուքի կը բաժնուի, անոնք կը զանազանուին Արեւելեան և Արեւմտեան կոչումներով, ինչպէս կը հաստատէ Քսենոփոն (431) ըսելով թէ Արեւելեանին սատրապն էր Որոնտաս, Արտաշէս Ուշեղի փեսան, և Արեւմտեանին՝ Տիրիբազ՝ «թարեկամ թագաւորին»։

Այս Արեւելեան և Արեւմտեան մասերու բաժանումները կը համապատասխանէ Մ. Խորենացիի ըմբռնումին որ «Արեւմտեան մեր կողմն» ըսելով կը սիրէ կոչել (Դպ. Ա. գլ. ԺԴ.) յետոյ «Փոքր Հայք» կոչուած աշխարհամասը, անշուշտ հակադրելով Արեւելեան մասի մը հետ։

Այս կերպով ինչպէս կը տեսնուի «Փոքր Հայք» և այլ յետսամուտ կոչումներով բաժանումները, ընդհանրապէս հայերու համար հաճելի եղած պիտի չըլլային, քանի որ անոնք իրենց մտքին մէջ ունէին մէկ Հայաստան և հայերէն բնակուած բոլոր երկիրները — որոնց մէջ էին նաև Եփրատէն մինչև Ալիս տարածուած երկիրները — կը նկատէին անոր անբաժան մասը։

Այս հայաբնակ և հայախօս երկիրները մինչև Ալեքսանդր Մակեդոնացիի երեւան գալը ամբողջութեամբ մնացին Պարսից իշխանութեան տակ։

Պարսիկ տիրապետութիւնը որ թէ՛ Հայաստանի և թէ՛ Կապադովկիոյ վրայ մօտաւորապէս երկու հարիւր տարի տեւած է, երկու երկիրներուն համար ալ համանման հետեւանքներ ունեցած է։

Երկու երկիրներն ալ օգտուելով Պարսիկ վարչական դրութենէն որ աւատական էր, և թոյլատու տեղական յատուկ վարչութիւններու, ունեցած են ինքնավար իշխանութիւններ, սեփական բանակ և այլն, և կազմակերպուած են իբր ազգ։

Հայերը և Փռիւգացիք (ուստի նաև Կապադովկիացիք) իրենց անջատ բանակներով, առանձին հրամանատարով և յատուկ զէնքերով — ինչպէս կը վկայէ Հերոդոտոս — կը մասնակցին Մարական պատերազմներուն։

Պարսիկ մշակոյթը երկու երկիրներուն մէջ ալ հաւասարապէս իր հզօր ներգործութիւնը ցոյց կուտայ, ամէն մարզերու մէջ։ Ինչպէս Հայաստանի մէջ պարսկերէնը տիրող լեզուն էր և նոյնիսկ մանկամարդ աղջիկներ զայն կը խօսէին — ինչպէս կը հաստատէ Քսենոփոն — հաւանօրէն նոյնպէս նաև Կապադովկիոյ մէջ անիկա պէտք է տիրող լեզու դարձած ըլլայ։

Այնպէս որ կարելի է ըսել թէ Հայաստանի և Կապադովկիոյ ցեղակից բնակիչները, համանման պայմաններու մէջ, նման ազդեցութեանց ենթարկուած, պահեցին իրենց հին նմանութիւնները և նկարագրի նոյնութիւնները։

Մասնաւորապէս պէտք է չեշտել թէ Պարսիկ տիրապետութեան գլխաւոր յատկանիշներէն մէկը եղած է երթեւեկի միջոցներու դիւ-

բացումը, թէ՛ վաճառականութիւնը զարգացնելու և թէ՛ զօրքերու արագ տեղափոխութիւնը ապահովելու համար։

Պետութեան ամէն մասերուն մէջ կային ճանապարհներ աւելի կամ նուազ լայն, բացի այն արքունական մեծ ճանապարհէն որ Շօշէն մինչև Սարտիկէ կ'երկարէր և կ'անցնէր հաւասարապէս Հայաստանէն և Կապադովկիայէն։ Ուրեմն այս մեծ ճամբան Հայաստանը յարաբերութեան կը դնէր Կապադովկիոյ հետ, և հայերը՝ որոնք Հնդկաստան կ'երթեւեկէին նոյն այդ շրջաններուն և այն ատեն իսկ, համբաւեալ վաճառականներ էին, անկարելի է մտածել թէ իրենց անմիջական դրացի Կապադովկիա երթեւեկ չընէին։

Այս հաղորդակցութիւնները անշուշտ մեծապէս նպաստած են պահպանելու վաղեմի յարաբերութիւնները և ստեղծելու երկու ժողովուրդներու միջեւ բարքերու և սովորութեանց համանմանութիւններ, որոնք առանց անոնց ալ անխուսափելիօրէն գոյութիւն պիտի ունենային, քանի որ թէ՛ Հայաստանի և թէ՛ Կապադովկիոյ բնակչութիւնը ցեղային միեւնոյն խառնուրդներով ստեղծուած էին, կ'ապրէին աշխարհագրական գրեթէ միեւնոյն սահմաններուն մէջ և ենթարկուած էին նոյն քաղաքական և մշակութային ազդեցութեանց։

Այս նմանութիւնները ակներեւ են մասնաւորապէս իբր ցեղային ժառանգութիւն։ Այսպէս, կրօնական մարզին մէջ կը տեսնենք Կապադովկիացիներու, Հայերու, Փռիւգացիներու, Լիւդիացիներու եւն. հասարակաց, հնագոյն ժամանակներէ եկած իգական գլխաւոր աստուածութեան մը պաշտամունքը։ Դամրայ սեփական Mâ տիկնոջ պաշտօնը ի Կոմանա, Հայոց՝ Անահիտի և Փռիւգացիներու և Լիւդիացիներու «Մեծի Մօրն» տիկնոջ պաշտօնները համեմատելի են իրարու (Հմմտ. Տաշեան, Ուսումն. էջ 242) և նոյն ծագումն ունենալ կը թուին։

Սակայն երկու ազգերու ցեղային և քաղաքակրթական յարաբերութիւնները և շփումները ճշդելու համար լաւագոյն կռուանը կրնար հանդիսանալ երկու ժողովուրդներուն լեզուները, որոնք սակայն իրարու հետ համեմատելու հնարաւորութենէն զրկուած է այսօր գիտութիւնը, վասնզի Դամիրք Հռոմայեցւոց և ապա՝ մանաւանդ Բիւզանդացւոց տիրապետութեան տակ՝ տակաւ յունախօս դարձած են և հելլենացած և կորուսած՝ իրենց ուրոյն ազգութիւնը և առանձին լեզուն, որ ոչ եւս է և իրմէ միայն աննշան հետքեր մնացած են այդ կողմերու բարբառին մէջ (Տաշեան, Ուսումն. էջ 237)։

Այդ հետքերը նոյնիսկ անբաւական են լուծելու համար Կապադովկեան լեզուին յատկանիշը և անոր ո՞ր ընտանիքին պատկանիլը։

Միայն նկատի ունենալով որ Կապադովկիացիք ինչպէս Հայերը խառնուրդ ժողովուրդ մըն էին (տես վերը, էջ 33–36) իրենց լեզուն ալ, ինչպէս Հայոցը պէտք է ընդունած ըլլայ իր մէջ զանազան լեզուական տարրեր, ուր գերակշռողը ո՞րը ըլլալը դժբախտաբար ճշդելու միջոցներէն զուրկ ենք։

Կապադովկիոյ մէջ գոյութիւն ունեցող ինչ ինչ սեմական սովորոյթներէն (տես էջ 35) — որոնք ոչ սեմական ժողովուրդներու մէջ ալ տեսնուած են (տես Ուսումն. էջ 240) — Դունքէր (Հին Պատմ. Ա. 403 եւն) կը հետեւցնէր թէ Կապադովկիացիք սեմական ցեղէն են, և ասոր վրայ հիմնուած՝ Paul Ernest Jablousky և Adelung կը կարծեն թէ Կապադովկերէնը Սեմական լեզու մըն է։ Heeren՝ զայն սիրիական բարբառ մը կը համարէ։ Ասոնք սակայն հեռու են ստոյգ իրականութիւն մը ըլլալէ, հակառակ այն անժխտելի իրողութեան թէ Կապադովկիա միշտ ունեցած է սեմական ծագմամբ զաղութ մը հնագոյն ժամանակներու ի կանէ և Կապադովկիացիք՝ յոյներէն նկատուած են Սուրիացիներ կոչուելով Սպիտակ Ասորիք։

Տօք. Մորթման, Կապադովկիոյ սորաբնակներուն վրայ գրած աշխատութեան մէջ յենլով այն ենթադրութեան վրայ թէ Կապադովկերէնը Փռիւգերէնի զաւառաբարբառ մըն էր և թէ Փռիւգերէնը մերձաւորագոյն ազգական Հայերէնի, ձեռնարկած է Հայերէնով մեկնել Կապադովկերէն բազմաթիւ տեղական անուններ որոնք ո՛չ հելլեներէն, ո՛չ թուրանեան ըլլալով, իրենց Կապադովկեան ծագումը կը յայտնեն։

Ֆրանսական Ակադեմիայի անդամ Frerec՝ Փռիւգերէնին Հայերէն լեզուի հետ ունեցած խնամութեան հին աւանդութեան վրայ յենլով և նկատելով որ Կապադովկիացիք Փռիւգացւոց ցեղակից էին, վճռեց թէ Փռիւգերէնը, Կապադովկերէնը և Հայերէնը միեւնոյն արիական լեզուին զաւառաբարբառներն են։ (De l'Année Vague Cappadocienne, Memoire de l'Academie de Belles Lettres, համար XIX կամ Տաղիկ, 1891, թ. 43, էջ 5)։

Գրեթէ նոյն եզրակացութեան եկած է հռչակաւոր ասիագէտ Lassen, իր «Փոքր Ասիոյ նախկին լեզուներու մասին» գործին մէջ, ուր կազմած է յատուկ ճիւղ մը Թրակօ-Արմենական անուն, որուն տակ կը դասէ հայերէնէն զատ Փոքր Ասիոյ միւս Արիական բարբառները, որոնց մին էր Կապադովկերէնը՝ իբր Արիական զաւառաբարբառ, անմիջական ազգական Սանսկրիտերէնի և մասնաւորաբար Երանեան ըսուած լեզուներուն, այսինքն հին Բակտրիարէնի և հին Պարսկերէնի։ (տես Քառօլիտի, «Բաղդատական բառգրքոյկ յունակապադովկերէն բառերու» յունարէն գործ. տպ. Զմիւռնիա, կամ Նարհիմ Կապադովկիոյ զաւառին հին լեզուն եւ նորա արդի Յունարէն զաւառաբարբառ. ԾԱԶիվ, 1891, թ. 43, էջ 5)։

Կապադովկերէնի նկատմամբ նման կարծիք մըն ալ յայտնած է ուրիշ ասիագէտ մը Paul Lagarde կոչելով այդ լեզուն, ինչպէս Փոքր Ասիոյ մի քանի ուրիշ բարբառները, Երանեան, Երանեան լեռնադաշտէն դուրս (Հմմտ. Նոյնք)։

Իրենց այս կարծիքին իբր փաստ Lassen և Lagarde մէջ կը բերեն Կապադովկիոյ նախկին թագաւորներուն մեզի ծանօթ անունները որոնք ամէնքն ալ՝ բացի մէկէն (Արքելայոս) զուտ Երանեան են (ինչպէս Փառնակէս, Արիվէոս, Միհրդատ, Արիարաթ, Արիարամ, Հոլոբեռնէս), Կապադովկիոյ մէջ պաշտուած աստուածներէն ոմանց անունները (ինչպէս Օմանոս, Ամարտադոս, Ասվամէոս, Զեւս), մանաւանդ Կապադովկեան ամիսներու անունները զորս Lagarde մեկնած է շնորհիւ Բակտրիարէնի և որոնց Երանեան ծագման կը վկայէ նոր պարսկական ամիսներու անուններուն հետ ունեցած յայտնի խնամութիւնը (1)։ (Հմմտ. Նոյն)։

(1) Ամիսներու անունները հրատարակուած են ըստ երկու պատճէններու որոնք կը գտնուին Բարիզի և Լէյտինի մատենադարանները։ Ասոնցմէ մին բուն ձեւն է և միւսը՝ անկէ համառօտեալը։ (տես Ուսումն. էջ 240)։

Սակայն ասոնք ալ վճռական փաստեր չեն և շատ քիչ կը զօրեն ցոյց տալու ազգին ցեղակցութիւնը ինչպէս կը պնդէ Կրիչմեր, որ կը կարծէ թէ բուն պարսից ամիսներուն անունները մտած են Դամիրք, ինչպէս ուրիշ բազում բաներ կրօնքի և պաշտամանց մէջ, պարսից իշխանութեան շրջանին:

Նոյն բանը պատահած է նաեւ Հայոց մէջ, թէ՛ կրօնական տեսակէտով և թէ՛ ամիսներու անունին:

Լագարդ սակայն չ'ընդունիր որ ամիսներու անունները փոխառեալ են, վասնզի թէպէտեւ մեծ նմանութիւն կայ, բայց ձեւերուն մէջ մեծ փոփոխութիւն կայ, և դիւրին չէ ճշդել թէ այդ բառերը Կիւրոսի օրերէն յետոյ ներմուծուած են թէ՞ մտած են Պարթեւաց այն հատուածին հետ որ 130 թուականին մտաւ այս երկիրը:

Բրուննոփէր եւս համաձայն է որ Կապադովկերէնը արիական ծագում ունի: Անիկա կը կարծէր «Ճշդիւ Կապադովկիոյ մէջ ինչպէս նաեւ բովանդակ Մեծաւոր Ասիոյ եւ Հայաստանի մէջ, որոնք նախնական բնակավայրերն են Հնդեւրոպացւոց, Զենդ-Արեաց եւ Սանսկրիտ-Արեաց լեզուի ժառանգութենէն մնացորդներ կան առընթեր իրարու, այնպէս որ զարմանալի չէ որ բառ մը Սանսկրիտ-Արիական ծագման մնացած է հոն իբր vasumanas» ուրիշներով հանդերձ, վասնզի Երանեան ուրիշ դից անուններուն մէջ կը գտնէր նաև անունը նշանաւոր զոհաբերութեան տեղւոյն Կոմանայի (Κόμανα = [Vo] hnmanô, կորուստով սկիզբին և փոփոխութեամբ թաւ ձայնին կոկորդականի) (տես Ուսումն. էջ 241):

Աթէնքի համալսարանի ուսուցիչներէն Քառոլիտի, ընդունելով հանդերձ թէ Կապադովկերէն լեզուի Արիական ծագման մասին յայտնուած կարծիքները մեծ հաւանականութիւն կրնան ունենալ, բայց ոչ գիտական վաւերականութիւն, մինչեւ որ չգտնուին հին կապադովկերէնի բաւական կարեւոր նշխարներ, կ'ընդգրկէ Kiepertի տեսութիւնը —որ խնդրոյն լուսաբանութեան համար իբր միակ միջոց ժամանակակից Կապադովկիոյ մէջ խօսուած յունարէն բարբառին հետազօտութիւնը ցոյց կուտար—և այս նպատակով մեծ դժուարութեամբ ուղղեւորութիւն մը կը կատարէ Տաւրոսի և Անդիտաւրոսի դժուարանցանելի շրջականները և կը հաւաքէ որչափ որ կարող կ'ըլլայ, բառերու, երգերու, առասպելներու մէջ պահուած լեզուի կենդանի նշխարները, և կը ջանայ երեւան հանել Կապադովկիոյ յունարէն գաւառաբարբառին մէջ մնացորդները նախահելլենական լեզուի մը: Քառոլիտի իբր արդիւնք իր հետազօտութեանց հրատարակութեան տալով «Բաղդատական բառգրքոյկ յունակապադովկերէն բառերու» գիրքը, իր կողմէ սա կարծիքը կը յայտնէ հնագոյն Կապադովկերէն լեզուի մասին:

«Քանի որ Կապադովկիոյ մէջ բնակեցան հին ժամանակներէ սկսեալ այլազան ծագում ունեցող, հետեւաբար եւ տարբեր լեզուներ խօսող ժողովուրդներ, եթէ ոչ հեռագոյն պատմական ժամանակներու մէջ, գէթ Ստրաբոնի ժամանակ ոեւէ միջոցաւ մը լեզուաց ձուլմամբը կամ առանցմէ միոյն պահուելովը կազմուեցաւ այն լեզուն որ, ըստ վկայութեան Ստրաբոնի, Տաւրոսէն մինչեւ Պոնտոս, Կողքիսէն ու Եփրատէն Ալիս կը խօսուէր: Թէ այս լեզուն ոչ Հայերէն, ոչ Փռիւգերէն, ոչ Սիրիական էր, կը վկայէ այդմ Ստրաբոն որ զանազանելով զայն Պափլագոնիոյ բարբառէն, կ'որոշէ այն սահմանները որոնց մէջ կը խօսուէր: Հելլեններէն անմիջապէս առաջ եւ ժամանակ մը Հելլեններէն վերջը, Կապադովկիոյ մէջ խօսուած այս լեզուն իմ հետազօտութեանցս համեմատ արիական



բարբառ մըն էր, մէկ կողմանէ ազգական Հելլեներէնի եւ Լատիներէնի, թերեւս աւելի մօտ վերջնոյն, միւս կողմէ Սանսկրիտերէնի, Պարսկերէնի ու Հայերէնի եւ որ հարաւային հնդկագերմանական լեզուներու, Գոթերէնի եւ Լիթուաներէնի հետ, արմատներու ուշագրաւ խնամութիւն մ'ունի, ինչ որ բնաւ անհաւատալի չէ, երբ ի նկատ առնենք հնդեւրոպական լեզուական ընտանիքին բոլոր ճիւղերուն իրարու հետ ունեցած նախնական ազգականութիւնը: Կապադովկերէնի այս նկարագիրը համարձակութիւն կուտայ ինծ ենթադրելու թէ այս լեզուն մէկն էր Փոքր Ասիոյ Փռիւգոպելասգեան լեզուներու որոնք արեւելեան արիական եւ Հելլենահիտալական լեզուներու մէջ կապ մը կը կազմեն» (Ծաղիկ, 1891, թ. 45 էջ, 3):

Ըստ Քառոլիտիի ուրեմն Կապադովկիոյ հին լեզուն Արիական էր կամ հնդեւրոպական և դրացի իսկ հայերէնի, ինչ որ Հայ աւանդութեան համաձայն է: Ստրաբոն որ քաջածանօթ էր իր իսկ երկրին հանգամանքներուն իբր Կապադովկիացի, գիտէ թէ Դամիրք՝ թէպէտ և բաժնուած էին, մէկ լեզու կը խօսէին մինչեւ Տաւրոս, Հայաստան և Կողքիս, բայց կ'ըսէ թէ ուրիշ լեզուներ ալ կային երկրին մէջ, որ արդարեւ հաւանական է ըստ Տաշեանի (տես Ուսումն. Դասական Հայ լեզուի, էջ 239-247): Այս լեզուներէն մէկն էր նաեւ Հայերէնը որ սփռեալ էր ամէն կողմերը, ինչպէս նաեւ դրացի երկիրները (Տես ՀԱ. 1900, էջ 112 եւյն. Ուսումն. Դասական Հայ Լեզուի էջ 24):

Եթէ հայերէն լեզուն տարածուած էր Կապադովկիոյ մէջ, ուրեմն Հայեր կային հոն այդ շրջանին և հնագոյն ժամանակներէ սկսեալ:

Այս բնակակցութիւնը անհետեւանք չէր կրնար մնալ: Քառոլիտիի գործը արդարեւ ցոյց կուտայ թէ Հայերէն լեզուի և Կապադովկերէնի միջեւ կապ մը գոյութիւն ունի՝ որուն պիտի անդրադառնամ երբ Կապադովկիոյ Հայոց լեզուին վրայ խօսելու առիթը ներկայանայ: Սակայն այդ կապակցութիւնը յստակօրէն ճշդել գրեթէ կարելի չէ, վասնզի Կապադովկերէնի մէջ Հայերէն բառերու գոյութիւնը, ինչպէս նաեւ քերականական ձեւերու նմանութիւնները, վճռաբար կարելի չէ ճշդել թէ ուղղակի Հայերէնի ազդեցութեամբ և Կապադովկիոյ մէջ ապրող և Հայերէն խօսող զանգուածներու կը պարտի՞ Կապադովկերէնը թէ այն հանգամանքի որ ինքն և հայերէնը իբր մայր ունին միեւնոյն նախալեզուն և նոյն ծագումը:

Դժբախտաբար չափազանց սահմանափակ են Հայ և Կապադովկեան լեզուներու յարաբերութեանց մասին մեր ծանօթութիւնները:

Նոյնքան ցաւալի է որ աւելի չեն մեր գիտցածները Հայ և Կապադովկեան հեթանոսական կրօնքին նմանութիւններուն և այլ նման քաղաքակրթական առնչութիւններուն մասին որոնք անպատճառ գոյութիւն ունէին երկու ազգերուն միջև:

Դժբախտաբար ժամանակի հնութիւնը արգելք կը հանդիսանայ աւելի որոշ տուեալներ տալու Հայ-Կապադովկեան յարաբերութիւններու մասին, — որոնք սակայն ապահովաբար գոյութիւն ունէին — և աւելի վաւերագրեալ փաստերը ընծայելու Հայաբնակութեան մը — թող ըլլայ քիչ թիւով — ապրումներուն և կեանքին Արգէոսի ըստորոտը՝ ուր անժխտելի է որ Հայեր ապրած են այդ հնագոյն ժամանակներուն, երբ դեռ Կապադովկիացի և Հայ ցեղերը իրենց վերջնական առանձնայատկութիւնները նոր կ'ստանային և կ'ապրէին իրենց սեփական ազգային կեանքին նախապատմութիւնը:

---

Գ.

# ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**( 322 — 301 Քրիստոսէ առաջ )**

## ԵՒ

# ԱՆԿԱԽ ԿԱՊԱԴՈՎԿԻԱ

**( Քրիստոսէ առաջ 301 — 17 Քրիստոսէ յետոյ )**

---

## Ա.

### ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

*Մեծն Աղեքսանդրի աշխարհակալութիւնները նոր էջ մը բացին մարդկային քաղաքակրթութեան համար, վասնզի Մակեդոնական տիրապետութիւնը հսկայ յեղաշրջում մը մտցուց Ասիոյ կեանքին մէջ։*

*Ասիական մեղկ դանդաղութիւնը տեղի տուաւ յունական աշխոյժ ոգիին և տարածիչը հանդիսացաւ քաղաքակրթութեան մը, որ բոլորովին նոր պատուաստ մը կը բերէր։ Դիոտորոս Սիկիլիացին կը հաստատէ թէ Աղեքսանդրի նպատակն էր Ասիոյ՝ աշխարհի այն գեղեցիկ այլ սակայն դժբախտ մասին մէջ, հաստատել, ընկերական և քաղաքական բոլորովին նոր կազմակերպութիւն մը որ փոխանակ նիւթական ոյժի միութեան հաստատուած ըլլար անկեղծ բարոյականի մը վրայ՝ հիմն ունենալով յունական դաստիարակութիւնը։ Թէ ո՞ր աստիճան ճիշդ էին ժամանակով այսքան հեռաւոր պատմագիրի մը տուած այս տեղեկութիւնները Արիստոտէլի աշակերտած աշխարհակալին համար, խնդրական է, սակայն անուրանալի իրողութիւն է որ արդիւնքին տեսակէտով իրագործուած է ինչ որ Դիոտորոս Սիկիլիացի իբր անոր նպատակը ներկայացուցած է։*

*Աղեքսանդրի աշխարհակալութեամբ Փոքր Ասիոյ խորերը և մինչեւ իրան ներմուծուած յունական քաղաքակրթութիւնը իր հիանալի արդիւնքները ունեցաւ, և իր մահէն յետոյ իր նուաճումները շարունակեց այդ երկրին մէջ նախ հելլենական և ապա Քրիստոնէական տարազով, մինչեւ մահմետականութեան երեւան գալը, միշտ իբր ոսոխ և ընդդիմադիր ունենալով արեւելեան քաղաքակրթութիւնը որուն փարած էին Պարթեւները և Սասանեանները՝ իբր ժառանգորդները Աքեմենեանց և Պարսից։*

*Աղեքսանդրի յաջորդներու ժամանակ յոյն գիտութիւնք և ար-*





ՄԵԾՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ

— Մեծն Աղեքսանդրի ուղեգիծը Փոքր Ասիոյ մէջէն.




ուհստք կը մշակուէին և յունական գրութեամբ վաճառականութիւնը կը ծաղկէր բովանդակ Արեւելքի մէջ։

Աղեքսանդրիա և Պերգամոն Աթէնքի համազօր մտաւորական կայաններ դարձած էին և յունարէնը պաշտօնական լեզուն էր պետութեան, վաճառականութեան և մտաւորականութեան։

Հերոնիմոս կը հաստատէ թէ բացի Գաղատիայէ չի կար երկիր մը Ասիոյ մէջ ուր չխօսուէր յունարէն։ (Հմմտ. Ա. Մ. Գարագաշեան, Քննական պատմություն Հայոց, Ա. հտ. էջ 75–77)։

Նոյնիսկ հեռաւոր Հայաստան և Պարթեւաստան յունական ազդեցութենէն ազատ չմնացին(1)։

Կապադովկիա՝ այդ հզօր ազդեցութենէն զերծ չմնաց, մանաւանդ որ անիկա ուղղակի և անմիջական տիրապետութեան ենթարկուեցաւ Մակեդոնական կայսրութեան։



ՄԵԾՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԶՈՐԵՔԴՐԱՄԵԱՆԸ

Աղեքսանդր Անկիւրիոյ վրայ քալելէ յետոյ մտաւ Կապադովկիա և գրաւեց երկրին մեծ մասը որ կը տարածուէր Ալիս գետին երկու կողմերը, և ինչպէս որ ուրիշ գրաւուած նահանգներու վրայ իր սպաները դրած էր փոխան պարսից սատրապներուն, նոյնը ըրաւ նաեւ Կապադովկիոյ համար, անոր սատրապ կարգելով Սաբիգտասը (Առիանոս, Գիրք Բ. գլ. բ. գ. Դիոդ. Սիկիլ. Գիրք ժէ. գլ. 29, Asie Mineure, Le bas. էջ 178 և 183)։

Այս մասին սակայն մասնաւորապէս Դիոտ. Սիկիլիացիի տեղեկութիւնները չփոխ են, այնպէս որ ոմանք կը պնդեն թէ Աղեքսանդր չէ մտած Կապադովկիա (Գարագաշեան, Քնն. Պատմ. Ա. էջ 79) և միայն գոհացած է Արիարաթէսի կողմէ իր գերիշխանութեան ճանաչումով։

Սոր իբր ապացոյց ցոյց կը տրուի Սիկիլիացիին այն տողերը (Գիրք ԺԶ. գլ. գ.) ուր Աղեքսանդրի մահէն(323) յետոյ իր տիրապետած երկիրներուն բաժանման վրայ խօսելով կ'ըսէ թէ Եւմէնէսի տրուեցաւ «Պափլագոնիան, Կապադովկիան եւ բոլոր դրացի երկիրները զորս Աղեքսանդր ժամանակ չանելու համար, չկրցաւ նուաճել Դարեհի դէմ իր արշաւանքի ընթացքին»։

Իսկ թէ ինիկ արքայական հարստութիւնը ինչ եղաւ այս մասին ալ համաձայն չեն գիտունները։

Ոմանք կը կարծեն թէ անիկա քիչ մը ատեն միայն ընդհատուե-

---

(1) Ըստ Պլուտարքոսի Արտաւազդ Հայոց թագաւորին յունարէն ողբերգութիւններ գրած ըլլալը, Պարթեւ բազմաթիւ թագաւորներուն դրամներուն վրայ տեսնուած յունարէն գիրերը և թագաւորներէն ոմանց «յունասէր» տիտղոսները կարկառուն փաստեր են յունական լեզուին ո՜ր աստիճան տարածուած ըլլալուն։

Պr. 11

ցաւ, Ալեքսանդրի մահէն վերջ, երբ Կապադովկիոյ թագաւորութիւնը վիճակեցաւ Եւմէնէսի (Բրիտանական Համայնագիտարան), մինչ ուրիշներ կ'ըսեն թէ Արիարաթէս մեռած է Պարսից հաւատարիմ (Դիոդ. Սիկ. ԺԸ. 16) և սոր համար «անոնց երկար տարիներ ինքնիշխան տիրող եղած է Կապադովկիացւոց»: (ՀԱ. 1900, էջ 36):

Սակայն Մակեդոնացի աշխարհակալը Կապադովկիոյ ըլլա՛յ մասամբ ըլլա՛յ ամբողջ տիրելով, անոր կեանքին մէջ խոշոր փոփոխութիւն մը մտցուց և անոր համար բացաւ նոր շրջան մը:

Դժբախտաբար Ալեքսանդրի կայսրութիւնը քայքայուեցաւ այնքան արագ որքան որ կազմուած էր, իր վաղահաս մահէն (323) յետոյ:

Նախ, բարձագոյն դիրքը, այսինքն տէրութեան խնամակալի պաշտօնը վիճակեցաւ փառասէր Պերտիկկասի, որ ժողովի հրաւիրելով բոլոր բանակին պետերը պետութիւնը նոր բաժանումներու ենթարկեց:

Անտիպատրոս և Կրատիր առին Մակեդոնիան և Յունաստանը, Անտիգոնէ՝ Լիւկիան, Պամփիւլիան և Փռիւգիան, Սելեւկոս՝ Բաբելոնը և Պտղոմէոս՝ Եգիպտոսը, Պուկէսէաս՝ Պարսկաստանը, Պիթոն՝ Մարաստանը, Լայոմեդոն՝ Ասորիքը և Փիւնիկէն, Նէոպտղոմէոս՝ Հայաստանը և քաջ և խոհեմ Եւմէնէսի(1) — Ալեքսանդրի գրագիրին — վիճակեցաւ Պափլագոնիան, Կապադովկիան և բոլոր դրացի երկիրները: (Asie Mineure, էջ 183):

Կապադովկիոյ բնիկ սատրապը Արիարաթէս (331–322) որուն երկրին մէկ մասը միայն գրաւած էր Ալեքսանդր, օգտուելով Ալեքսանդրի պատերազմներով զբաղած վիճակէն, ամրապնդեց իր իշխանութիւնը Կապադովկիոյ մէջ և հռչակեց ինքզինքն թագաւոր, դիզեց ահագին հարստութիւն և զինեց ստուար բանակ մը, կազմուած բնիկ և օտար զօրքերէ:

Պերտիկկաս չէր կրնար ձգել որ շարունակուի այս անկախ իշխանութիւնը՝ Մակեդոնական կայսրութեան ասիական նահանգներուն կեդրոնը:

Ուրեմն թագաւորական բանակով եկաւ Արիարաթէսի վրայ:

Արիարաթէս իր հրամանին տակ ունենալով 30.000 հետեւակ, և 15.000 հեծեալ զօրք, կը կարծէր թէ ի վիճակի էր Պերտիկկասի դիմադրելու, բայց յաղթուեցաւ և գերի ինկաւ:

Արիարաթէս և իր բոլոր ընտանիքը խաչ հանուեցան ամենէն անգութ վարմունքներու ենթարկուելէ յետոյ (322 Քր.է առաջ):

Արիարաթէսի մահով վերջ կը գտնար Կապադովկիոյ անկախութիւնը որ իրմով սկսած էր: Արիարաթէս Ա.ի յաղթելէ յետոյ, Պերտիկկաս իր թշնամիներուն կեանքը շնորհեց, հաստատեց կարգը Կապադովկիոյ մէջ և զայն յանձնեց Եւմէնէսի. (Դիոդ. Սիկիլիացի. Գիրք ԺԸ. գլ. 16), որ հաւատարիմ մնաց իրեն երբ Ալեքսանդրի զօրավար-

---

(1) Եւմէնէս, Քերսոնէսի մէջ յունական Կարտիա քաղաքէն էր ծննդեամբ, ուստի օտարական և ոչ Մակեդոնացի: Աշխարհակալին գրագիրի պաշտօնը Մակեդոնացիք՝ տակաւին այն ատեն ոչ մշակուած՝ ստիպուած էին յոյնի մը թողուլ:



ները որոնք զանազան նահանգներ ստացած էին չուզեցին ճանչնալ անոր հեղինակութիւնը իբր խնամակալ պետութեան:

Պերտիկկաս՝ մասնաւորապէս իրեն մրցակից Անտիպատրոսի դէմ— որ կ'ուզէր յափշտակել խնամակալութիւնը — դաշնակցեցաւ Եւմէնէսի հետ, որուն տուաւ նաև Կարիոյ, Լիւկիոյ և Հելլեսպոնտեան Փռիւգիոյ (= յետոյ Բիւթանիա) նահանգները (Յուստինոս, Գիրք. ԺԴ. գլ. 6): Եւմէնէս քաջութեամբ կռուեցաւ Պերտիկկասի հակառակորդներուն դէմ, սակայն երբ ան սպանուեցաւ (321) և Անտիպատրոս իր ոխերիմ հակառակորդը, խնամակալ եղաւ, Կապադովկիան իրմէ առնուելով տրուեցաւ Նիկանորի և Մեծն Փռիւգիոյ և Լիւկիոյ սատրապ Անտիգոնոսի պաշտօն տրուեցաւ Եւմէնէսը վանելու (319): Եւմէնէս հակառակ զօրաւոր բանակ մը ունենալուն պարտուեցաւ և հազիւ կրցաւ ապաստանիլ Նորա(1) որ խիստ պզտիկ տեղ մըն էր, բայց պաշտպանութեան համար սքանչելի յարմարութիւններ ունէր: Շինուած էր խիստ բարձր ժայռի մը կատարը և տեղւոյն դիրքը, ինչպէս մարդոց աշխատութիւնները, զայն անառիկ դարձուցած էին: Անկէ զատ հոն կային ցորենի, փայտի և ամէն տեսակ պարէններու մեծ մթերանոցներ որոնք կարող էին բազմաթիւ տարիներ հոն ապաստան փնտռել ստիպուած անձերուն պէտքերը հոգալ (Հմմտ. Asie Mineure, էջ 188): Հոն պաշարուեցաւ Եւմէնէս իրեն հետ մեռնելու յօժար 600 անձնուէրներով: (Տես Դիոդ. Սիկ. ԺԹ. 41, Պլուտարքոս, Եւմէնէս, 9 և 10):

Երբ Անդիպատրոս մեռաւ (319) և Պոլիպերքոն — Եպիրոսցի պզտիկ տկար իշխան մը— անոր յաջորդեց, Անտիգոնոս որ ինքն կը ցանկար խնամակալութեան, հրաւիրեց իր մօտ Եւմէնէսը և անոր խոստացաւ ընդարձակ երկիրներ, հարստութիւն, և վեհապետական իրաւունքներու հաւասար կիրառութիւն՝ եթէ իրեն միանար:

Եւմէնէս որ յուսահատիլ սկսած էր հաւանեցաւ և Նորայի պաշարումը վերցաւ, և Եւմէնէս վերստին դարձաւ տէր Կապադովկիոյ ուր շրջապատուեցաւ իր հին բարեկամներէն և ճարտարութեամբ հաւաքուած նոր կուսակիցներէն: Սակայն փոխանակ Անտիգոնոսի գործակցելու անոր հակառակորդ հանդիսացաւ, իբր թէ Ալէքսանդրի ընտանիքին հանդէպ հաւատարմութիւն ցոյց տալով, և այսպէս գտնալով աջակցութիւն անոնցմէ և Պոլիպերքոնէ, սակայն միեւնոյն ատեն իրեն դէմ յարուցանելով նոր հակառակորդներ, որոնց դէմ մինակը մնաց երբ Կասանդրոս Մակեդոնիոյ մէջ կայսրութեան տէր դարձաւ (316) և իր զինակիցը Անտիգոնոս՝ — Եւմէնէսի ոխերիմ հակառակորդը—, սկսաւ հալածել Եւմէնէսը, որ քաշուեցաւ Մարաստան, ուրկէ յաջողեցաւ անակնկալի բերել իր հակառակորդը և խորտակել անոր ոյժը: Թերեւս կատարեալ ըլլար իր յաղթանակը բայց աննշան պատահար մը ոչ միայն իր յաջողութիւնը ձախողուածի փոխեց, այլ իր կորուստին պատճառ եղաւ: Անտիգոնոս թէպէտեւ պար-

---

(1) Նորա կամ Ներուասոս կը գտնուէր Արգէոսի հիւսիս Էքրէճիկ տաղի վրայ կամ Հասան տաղի վրայ՝ Հելվա-Տէրէի քով ըստ Ռամսէյի: Ոմանք զայն նոյնացուցած են Նէվշէհիրի մերձակայ Նար գիւղին հետ որ հիններուն Նիւսան է ըստ Մորտմանի:

տուած՝ գրաւած էր Եւմէնէսի բանակին բոլոր հանդերձանքը, զորս ստանալու ընչաքաղցութեամբ Մակեդոնացի զինուորները համաձայնեցան Անտիգոնոսի յանձնելու Եւմէնէսը որ իր յոյն ծագումին համար օտարական նկատուած և իբր գրչի մարդ արհամարհուած էր իրենց զէնքերով միայն սնուցող Մակեդոնացիներէն։ Եւմէնէս վերջապէս կ'իյնար իր սեփական բանակին մէջ, սեւ դաւով «արծաթէ վահաններ կրողներ»ուն և կ'սպանուէր (315 Քր.է առաջ) բանտին մէջ, իր բազմաթիւ զինակիցներուն հետ, իր հակառակորդներուն հրամանով (Dr. Georges Weber. Histoire Universelle. T. III. էջ 261)։

Այս յաղթութենէն յետոյ Անտիգոնոս եղաւ տէր և տիրական Ասիոյ և Շոշի գանձերը առաւ և աւելցուց թիւը վարձկան գունդերուն, այնպէս որ կրցաւ ասպարէզ կարդալ միւս բոլոր զօրավարներուն և զանոնք ստիպել ճանչնալու զինքն իբր վարիչ և յաջորդ Աղեքսանդրի ընդհանուր թագաւորութեան։ Երբեք չէր ծածկեր թէ կը ցանկար Աղեքսանդրի կայսրութեան տիրելու, այնպէս որ երբ առաւ իր դաշնակից Սելեւկոսէն Բաբելոնի կառավարութիւնը, անխոհութիւնը և վտանգը միացուց չորս գլխաւոր զօրավարները, Պտղոմէոսը, Սելեւկոսը և Լիւսիմաքոսը (որ Թրակիոյ մէջ դիրք բռնած էր) և Կասանդրոսը (Մակեդոնիոյ մէջ) դաշնակցութեան մը մէջ ընդդէմ Անտիգոնոսի և իր տղուն Դեմետրի (312)։

Այս դաշնակցութեան կազմութեան մէջ դեր կատարած է նաեւ Կապադովկիոյ շուրջ ծագած անհամաձայնութիւն մը։

Պտղոմէոս, Լիւսիմաքոս և Կասանդրոս, որոնք Անտիգոնոսի բարեկամները և անոր յաջողութեան նպաստողները եղած էին, ի մէջ այլոց պահանջած էին որ Կապադովկիան և Լիւկիան տրուի Ասանդրոսի (Asie Mineure, էջ 197) սակայն Անտիգոնոս մերժած էր, ինչ որ պատճառներէն մէկը եղած էր որ անոնք դաշնակցին ընդդէմ իրեն։

Դաշնակից զօրավարները փոփոխակի յաջողութեամբ, Ասիոյ և Յունաստանի մէջ, պատերազմ մղեցին։ Այս երկարատեւ կռիւներու միջոցին Սելեւկոս, Գազայի մօտ Դեմետր Պոլիորկետիսի(1) վրայ յաղթանակ մը շահելէ յետոյ, կը փութայ գրաւել, տկար բանակով մը Բաբելոնը և արեւելեան նահանգները, իրողութիւն որ կը թուի այնքան նշանակելի ժամանակակիցներուն և յաջորդ սերունդներուն, որ 312 տարին կը նշանակեն իբր մեկնակէտ մը նոր թուականի մը որ կոչուած է Սելեւկեան։

Ի հակառակէն, Դեմետր, Կիպրոսի Սալամին քաղաքին մօտ, նաւային մեծ յաղթանակ մը կը շահի Պտղոմէոսի դէմ, որուն հետեւանքով Անտիգոնոս և իր որդին, թագաւոր տիտղոսը կ'առնեն։ Իրենց հակառակորդները անմիջապէս անոնց օրինակին կը հետեւին և իրենք ալ ինքզինքնին թագաւոր կը հռչակեն։

Այսպէս, երկար միջնարարէ մը յետոյ կ'առնուի վերջին քայլը Աղեքսանդրի թագաւորութեան կազմալուծման։

(1) Poliorcète (=պաշարող կամ քաղաքառու) մականուն մըն էր որ իրեն տրուած էր քաղաքներ պաշարելու արուեստին մէջ իր ցոյց տուած գերազանցութեան համար (Dr. Georges Weber, Histoire Universelle, t. II էջ 359)։



Բայց Անտիգոնոսի վրիպած մէկ յարձակումը Եգիպտոսի վրայ և Դեմետրի ձախողած ձեռնարկը Հռոդոս կղզին գրաւելու համար (304) կը պահէ քանի մը տարիներ եւս պատերազմին բախտը առկախ, մինչեւ Իպսոսի (Փռիւգիոյ մէջ) մեծ ճակատամարտը (301), — ուր ութսունամեայ Անտիգոնոս կ'իյնայ և Դեմետր կը փախի — կը վճռէ Ասիոյ ճակատագիրը զայն թողլով դաշնակիցներուն ձեռքը։

Մինչդեռ Դեմետր, իբր բախտախնդիր «ծովու թագաւոր» կ'երթար հոս հոն յունական ջուրերու և ծովեզերեայ երկիրներու մէջ թափառելու, իր հակառակորդները կը ձեռնարկեն հողերու նոր բաժանումի մը, որով Լիւսիմաքոսի սեփականութեանց վրայ կ'աւելնար Փոքր Ասիան մինչեւ Տաւրոս, բացի հարաւ-արեւմտեան մասէն Կապադովկիոյ և թերեւս նոյնիսկ Մեծ-Փռիւգիայէն, որ Անտիգոնոսի պետութեան միւս մասերուն հետ կը մնար Սելեւկոսի։

Կապադովկիա, որ ինչպէս տեսնուեցաւ Մակեդոնական տիրապետութեան շրջանին գլխաւոր թատերավայրերէն մին եղաւ ներքին պատերազմներուն, կը կառավարուէր ուղղակի Աղեքսանդրի զօրավարներէն, մինչ իր բնիկ թագաւորական ընտանիքէն միակ ազատուած ժառանգը կը գտնուէր Հայաստան ապաստանած։

## Բ.

## ԱՆԿԱԽ ԿԱՊԱԴՈՎԿԻԱ

Իպսոսի ճակատամարտէն յետոյ Կապադովկիան կ'ենթարկուէր, ինչպէս տեսնուեցաւ Սելեւկոսի իշխանութեան, որ Ասիոյ մնացեալ մասին տիրող Լիւսիմաքոսի հետ կռիւի պիտի բռնուէր, քանի որ երկուքն ալ կը ցանկային Ասիոյ ամբողջական տիրապետութեան։

Երկու մրցակից թագաւորութիւնները, տիրաշահելու համար այդ երկիրներու բնիկները, թոյլատու գտնուեցան շարունակութեանը Փոքր Ասիոյ մի քանի բնիկ իշխանութիւններուն, որոնք տիրող խառնակութիւններէն օգտուելով գոյութիւն առած էին և ամրապնդուած, մանաւորապէս տակաւին շարունակուող պայքարին միջոցին, մէկ կամ միւս կողմին ընծայած աջակցութեամբ։

Այսպէս 323էն մինչեւ 301 տեւող երկարատեւ կռիւները և 301էն մինչև 282 Լիւսիմաքոսի և Սելեւկոսի միջեւ շարունակուած պայքարը, պատճառ եղան որ Փոքր Ասիոյ հողին վրայ ծագում առնեն աւելի կամ նուազ անկախ կարգ մը իշխանութիւններ կամ թագաւորութիւններ, ինչպէս Մեծ և Փոքր Հայաստանի կրկին իշխանութիւնները, բուն և Պոնտական Կապադովկիոյ դարձեալ կրկին թագաւորութիւնները, Պափլագոնիոյ, Բիւթանիոյ և Պերգամոնի թագաւորութիւնները, որոնցմէ առաջին երեքը Սելեւկեան իշխանութեան ենթարկուած հողերու մէջ էին և իրենց աշխարհագրական դիրքովը այս թագաւորութեան հիւսիսային և արեւմտեան սահմանագլուխներուն և պետութեան վտանգուած եզերքներուն վրայ կը գտնուէին, մինչ Լիւսիմաքոս իր ազդեցութեան տակ ունէր Պոնտական Կապադովկիան և Բիւթանիան, որ մանաւորապէս շրջապատուած էր ասիական պե-

տութեան երկիրներէն (տես Droysen, Histoire des Succ. d'Alex. Հատոր Ա. էջ 546 և 547)։

Կապադովկիա որ իր անկախութիւնը կորսուած էր 322ին Արիարաթէս Ա.ի և իր ընտանիքին սպանութեամբ և կը կառավարուէր Մակեդոնացի կուսակալներով, այս խառնակութեանց միջոցին կը վերագտնէ իր անկախութիւնը։

Դիոտորոս Սիկիլիացի կը պատմէ թէ «Արիարաթէս, նախորդ թագաւորին որդին(1), զանու յոյսէն հրաժարելով, բարեկամներու պզտիկ թիւով մը հաւեցաւ Հայաստան: Քիչ յետոյ, Եւմենէս եւ Պերդիկկաս մեռնելով եւ Անտիգոնոս եւ Սելեւկոս այլուր զբաղած ըլլալով, Արիարաթէս ստացաւ Հայոց Արդուարդ թագաւորէն բանակ մը, սպանեց Ամինտաս Մակեդոնացիներու զօրավարը եւ անմիջապէս Մակեդոնացիները երկրէն դուրս վանելով՝ իր հայրենի գահը բազմեցաւ»:

Անիկա փրկուած էր իր ընտանիքին կոտորածէն և ազատ մնացած հետապնդումէ, և Կապադովկիոյ «յետ առ Սելեւկեանն նահանգ Մակեդոնացւոց լինելոյ» այսինքն 300ին Ք.ր.է առաջ (Հ. Յով. Գաթրճեան, Տիեզ. Պատմ. Բ. հատոր, էջ 72) կամ քիչ մը առաջ 301ին՝ Իպսոսի ճակատամարտին տարին, Փոքր Ասիոյ ընդհանուր խառնակութենէն օգտուելով կու գար Հայաստանէն և կը գրաւէր իր ժառանգութիւնը։

Կապադովկիան՝ այսպէս 300-301ին կրկին կը հպատակէր բնիկ արքայական ընտանիքին պատկանող իշխանի մը՝ Արիարաթէս Բ.ի, որուն նախնիքը ըստ աւանդութեան սերած Պարսկաստանի Աքեմենեաններէն Քրիստոսէ 670 տարի առաջ Կապադովկիոյ գահուն տիրած և մինչեւ Արիարաթէս Թ. (91 Քրիստոսէ առաջ), այսինքն 579 տարիներ Կապադովկիոյ արքայական իշխանութիւնը իրենց ձեռքը ունեցած են։ (Բրիտանական Համայնագիտարան):

Արիարաթէս Բ. իր յաջողութիւնը կը պարտէր Հայոց, որոնք այդ ժամանակ, նոյնպէս առիթէն օգուտ քաղելով, ապստամբած էին Մակեդոնացւոց դէմ և բնիկ իշխանի մը կը հնազանդէին։

Սակայն ոմանք կը մերժեն վաւերականութիւնը Սիկիլիացի պատմագիրին աւանդածներուն, Արիարաթ Բ.ի ձեռամբ պետութեան վերակազմութեան պարագաներուն մասին, և կը կարծեն թէ Սելեւկեանք երկիրը յանձնած էին կուսակալներու որոնք յետոյ եղած են ինքնիշխան դէպի 312 (Գարագաշեան. Քնն. Պատմ. Բ. հտ. էջ 102)։

Ի՞նչ կերպով և ե՞րբ որ ալ Կապադովկիա գտած ըլլայ իր անկախութիւնը, որոշ է թէ Արիարաթ Բ. իր իշխանութեան տակ ունէր միայն այս երկրին հարաւային մասը, վասնզի նոյն ժամանակ արդէն Միհրդատ Կտիստէս — հաւանօրէն պարսիկ իշխան մը — (Գարագաշ. Քնն, Պատմ. Բ. էջ 102) Պոնտոսի թագաւորութեան հիմը դրած էր հիւսիսային Կապադովկիոյ մէջ (հմմտ. Zimmerer, ՀԱ. 1900, էջ 36)։

Կապադովկիա անունով ճանչցուած երկրին մէջ կազմուած կերպով մը ճորտ այս երկու պետութիւնները, որոնք գոյութիւն առած էին Ասիոյ մէջ Մակեդոնացի աշխարհակալին զօրավարներուն իրարու

(1) Ոմանք որդեգիրը կամ ազգականը կը ներկայացնեն (Հ. Յով. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ. հատոր, էջ 72)։ Ջամիչեան (Ա. էջ 128) անունը Արիթէս կը դնէ։



դէմ մղած պատերազմներէն օգտուելով, անշուշտ շատ փոքր շրջանակներ ունէին իրենց տիրապետութեան տակ։

Համանման պայմաններու մէջ և միաժամանակ կազմուած այս երկու պետութիւնները՝ Պոնտոս և Կապադովկիա նման պայմաններու մէջ ալ ընդարձակուեցան։

Կապադովկիոյ վերակազմեալ իշխանութիւնը օգտուեցաւ Գաղատական վարձկաններէ(1) և յետոյ միացաւ Սելեւկեանց հետ, որոնց հետ իր յարաբերութիւնները յաճախ ամրապնդուեցան իր իշխաններուն Սելեւկեան թագաւորական ընտանիքէն աղջիկներու հետ ամուսնութեամբ։

Արիարաթեանք միշտ հաւատարիմ դաշնակիցներ մնացին Անտիոքոսի և Գաղատացւոց՝ Հռոմի դէմ մղուած պատերազմներու մէջ, մինչեւ որ անոնք ջախջախուեցան և խոնարհեցան Հռոմէական զօրութեան առջեւ։ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 37)։

Իր դերը և իր դիրքը իբր պետութիւն միշտ երկրորդական եղաւ և չունեցաւ երբեք փառքի ու փայլի շրջան մը, և կարելի է ըսել նոյնիսկ լիակատար անկախութիւն մը։

Հազիւ թէ Արիարաթէս Բ.ի կողմէ երկրին բնիկ իշխանութիւնը վերակազմուած էր երբ Կապադովկիան խաղալիք դառնալ սկսաւ Փոքր Ասիոյ մէջ տիրապետող մեծ ուժերուն, որոնց մէջ ամէնէն նշանակելի դերը կատարել կոչուած էր Հռոմի հասարակապետութիւնը, որ Սելեւկեան և Պերգամոնի(2) թագաւորութեանց մրցակցական պայքարին միջամտելով սկսաւ խառնուիլ Ասիոյ գործերուն և իրեն նպատակ ըրաւ ընկճել և անշքացնել Սելեւկեան թագաւորութիւնը ապստամբութեան գրգռելով անոր գերիշխանութեան տակ գտնուող երկիրներու իշխանները, իրենց անկախութիւն շնորհելու հրապուրանքով, մինչ իր նպատակն էր Ասիական հսկայ այդ պետութիւնը բաժան բաժան ընել այդ կոտրակեալ պետութիւնները յետոյ դիւրաւ նուաճելու համար։

Հռոմ իր անեղծելի սկզբունքն էր որ կը կիրարկէր՝ «բաժանեա զի տիրեսցես»։

Կապադովկիա որքան ատեն որ Սելեւկեան թագաւորութիւնը ամե-

(1) Թափառական և բարբարոս Կելտական Գաղիացի ցեղեր Ք.ր.է առաջ Գ. դարուն իրենց բնիկ երկրէն (=հիմա Ֆրանսա), արշաւեցին հիւսիսային Իտալիա և կողոպտեցին Հռոմը, և Գ. դարուն (278–280 Ք.ր.է առաջ) առաջացան մինչեւ Մակեդոնիա, ուր սպաննեցին Պտղոմէոս Կեռաննոս թագաւորը, և ոտնակոխ ըրին Յունաստանը մինչեւ Դելփիս ու Կորնթական ծոց, աւարառութեամբ, սպաննութիւններով և աւերածութեամբ։ Յետոյ անցան Ասիա, հրաւիրուելով Բիւթանիոյ թագաւորէն և հոն իրենց դէմ գտան յունական աշխարհի բոլոր միապետները։ Գաղիացիները՝ հաստատուեցան Անկիւրիոյ շուրջը, որ իրենց անունով կոչուեցաւ Գաղատիա։

Իրենց պատերազմի բնազդները միշտ զօրաւոր ըլլալով շրջակայ պետութեանց իբր վարձկան զինուոր ծառայել իրենց նախընտրած գործերէն մին եղած է։

(2) Պերգամոնի թագաւորութիւնը սկսած է 283ին նախ քան զՔր. և վերջացած է 129ին՝ երբ իր վերջին թագաւորը Արիստոնիկոս իբր ապստամբ սպանուած է Հռոմի մէջ (Գարագաշեան Քնն. Պատմ. Բ. էջ 102)։

նաղօր էր Ասիոյ մէջ՝ մանաւորապէս վերջ տալէ յետոյ Լիւսիմաքոսի թագաւորութեան (282) և կը տիրէր Հնդկաստանի սահմաններէն մինչև Հելլեսպոնտոս, ունեցաւ խաղաղութեան շրջան մը։

Այս խաղաղութեան շրջանին մէջ Կապադովկիա սերտօրէն կապուած էր Սելեւկեանց, և 301էն մինչև Մեծն Անտիոքոս (224–187), երբեք թատերավայր չեղաւ պատերազմներու։

Հետեւաբար խաղաղ բարգաւաճութեան շրջան մը ունեցաւ։

Իր գահուն վրայ յաջորդաբար կը բազմին, Արիարաթէս Բ.էն (301–280) յետոյ Արիարամ (280–230) և Արիարաթէս Գ. (230–220), ինչպէս իրենց դրամները կը հաստատեն։



ՍԵԼԵԿՈՍ ՆԻԿԱՏՈՐ Ա.Ի ԴՐԱՄԸ

Առնցմէ առաջին երկու թագաւորներուն պատմութիւնը իրարու հետ խառնըւած և շփոթուած է, այնպէս որ այն քիչ տեղեկութիւնները որ ունինք իրենց մասին հեռու են շատ յստակ ըլլալէ, վասնզի իրարու գահակից եղած են, ինչպէս կը հաւկըցուի Դիոտորոս Սիկիլիացիի ծանօթ հատուածին՝ սա տողերէն.

«Արիարաթէս ունեցաւ երեք զաւակ որոնց անդրանիկը, Արիարամ, ժառանգեց թագաւորութիւնը: Այս վերջինը կնքեց «Աստուած» մականուանեալ Անտիոքոսի հետ, ընտանեկան դաշինք մը, ստանալով իր որդիներէն անդրանիկին՝ Արիարաթէսի համար ձեռքը Անտիոքոսի աղջկան Ստրատոնիկի: Արիարամնէս, սիրելով շատ իր զաւակները, թագաւորութեան գահ բարձրացուց իր տղան Արիարաթէս եւ զայն մասնակից ըրաւ իշխանութեան: Իր հօրը մեռած ատեն, Արիարաթէս թագաւորեց առանձին, եւ մեռնելով թողուց գահը իր տղուն Արիարաթէսի, դեռ դեռատի»:

Կապադովկիա այդ շրջանին կը գտնուէր հեռու համաշխարհային պատմութեան մարզէն և ինքն իր մէջ ամփոփուած կեանք մը կ'անցնէր։

Իր պատմութիւնը կը լծորդուի ընդհանուր ազգաց պատմութեան երբ Սելեկեան Մեծն Անտիոքոս Գ. (224 - 187) թագաւորը, իր յաջողութիւններէն հպարտացած Մակեդոնական մեծ կայսրութիւնը վերակազմել կը ձեռնարկէ, ծրագրելով Թրակիոյ վրայ իր տիրապետութիւնը հաստատել և Հռոմէական ազդեցութեան ենթարկուած Մակեդոնիան և Պերգամոնը եւս նուաճել։ Ասիկա պատճառ կ'ըլլայ որ Հռոմի զայրոյթն ու ատելութիւնը իր վրայ հրաւիրէ։



ՄԵԾՆ ԱՆՏԻՈՔՈՍ Գ.Ի ԴԻՄԱՆԿԱՐԸ ԻՐ ՉՈՐՍ-ԴՐԱՄԵԱՆԷՆ ԱՌՆՈՒԱԾ

Հռոմ տիեզերական տիրապետութեան իր ձգտումին մէջ չէր կրնար թոյլատրել որ այդպիսի ահարկու ոյժ մը գոյութիւն առնէր Արեւելքի մէջ։ Ուստի Անտիոքոսի ազդարա-



րեց Եգիպտոսի և Թրակիոյ տիրապետութեան գաղափարէն հրաժարիլ, բայց խրոխտ Անտիոքոս՝ արհամարհեց զայն պատասխանելով դեսպաններուն որ «ինչպէս որ ես Իտալիոյ գործերուն չեմ խառնուիր, իրենք ալ իմ գործերուս թող չխառնուին»։

Հռոմ երկրորդ փիւնիկեան պատերազմին (216–202) տագնապով զբաղած, չկրցաւ անմիջապէս գասը տալ, սակայն Կարքեդոնի ընկճումէն յետոյ, պատեհութիւնը չկորսնցուց,

Ասոր գեղեցիկ առիթը ընծայեց՝ Աննիբալ, փիւնիկեան Բ. պատերազմին հերոսը և իր ժամանակին ամէնէն մեծ ռազմավարը, որ գործադրած էր հին ժամանակներու մեծագոյն արշաւանքը Կարքեդոնէն մինչև Հռոմ իջնալով Պիրէնեան և Ալպեան լեռներէ անցնելով։ Ան Զամայի ճակատամարտէն յետոյ յղացաւ Արեւելքն և Արեւմուտքը Հռոմի դէմ հանելու գաղափարը և այս նպատակով սկսաւ թղթակցիլ Մեծն Անտիոքոսի հետ, և անոր ներշնչող հոգին եղաւ Հռոմի դէմ պայքարին մէջ։

Անտիոքոս Գ. արդարեւ Մեծ մականուանեալ վեհապետը, կ'ուզէր կազմել դաշնակցութիւն մը Փոքր Ասիոյ թագաւորներու հետ, որպէսզի պատուար կանգնի Հռոմի յառաջխաղացութեան դէմ։

Անիկա խմատուն նախատեսութեամբ մը կը մտածէր որ եթէ Կապադովկիոյ, Պոնտոսի, Պերկամոնի և Բիւթանիոյ թագաւորները իրենց ոյժերը միացնէին իրենին, և անոնց օգնութեամբ կարելի ըլլար Յունաստան ոտք դնել, Փիլիպպոս Մակեդոնիոյ թագաւորը ետ հակառակ իր ծանր կորուստներուն, պիտի չի թերանար իրեն քաջալեր հանդիսանալու և Հռոմ պիտի ստիպուէր հրաժարիլ իր ասիական երկիրներու տիրելու ծրագիրէն և զինքը ազատ պիտի ձգէր տէր դառնալու Աղեքսանդրի կայսրութեան բեկորներուն։

Բայց հեռաւոր Հռոմէացիք Ասիոյ այս թագաւորներուն նուազ վտանգաւոր թուելով քան դրացի Անտիոքոսը, իրենցմէ ոչ մէկը ընդունեց Սուրիոյ թագաւորին իմաստուն առաջարկը, բացի Կապադովկիոյ թագաւորէն, որուն կնութեան տուաւ Անտիոքոս իր աղջիկներէն մէկը՝ Անտիոքիսը։ (Ապպիանոս, Սուր. գլ. 5. ինչպէս նաև Դիոդորոս Սիկիլիացի, նոյն)։

Անտիոքոս իր միւս աղջիկը առաջարկեց Պերկամոնի Եւմէնէս թագաւորին, որուն զինակցութիւնը բոլոր ասիական այս իշխաններուն մէջ, կը թուէր աւելի ցանկալի, սակայն անիկա մերժեց այս առաջարկը (հմմտ. Asie Mineure էջ 268)։

Ասով հանդերձ Անտիոքոս երբ տեսաւ թէ Հռոմ դէպի Յունաստան զօրք կը ղրկէ, 10.000 զօրքով հոն փութաց, յուսալով որ յոյները զինքն իբր ազատարար պիտի ընդունէին և իրեն պիտի միանան։ Սակայն յուսախաբ եղաւ, և վերջապէս ստիպուեցաւ փախչիլ Ասիա (192 Քր.Է առաջ), ուր կը ղրկէ Հռոմ Լուկիոս Սկիպիոն հիւպատոսը (յետոյ Ասիացի մականուանեալը) իր եղբօրը Սկիպիոն Ափրիկեցիի՝ Աննիբալի յաղթականին հետ։

Անտիոքոս չարաչար պարտուեցաւ վճռական ճակատամարտի մը մէջ որ տեղի ունեցաւ Լիւդիոյ Մագնեսիա քաղաքին մօտ (5 Հոկտ. 190 Քր.Է առաջ)։

Այս ճակատամարտը վճռեց Ասիոյ ճակատագիրը, վասնզի Անտիոքոս ստիպուեցաւ հրաժարիլ Տաւրոսէն հիւսիս-արեւմուտք գտնուող

երկիրներէն, որոնց բնիկ իշխանները՝ Հռոմի իրենց ընծայած աջակցութեան համար կ'ստանային անկախութիւն։

Իրենց անկախութիւնը ստացող երկիրներէն մէկն ալ Կապադովկիան էր, որուն Արիարաթ Դ. թագաւորը (220–166) նախապէս իբր զինակիցը Մեծն Անտիոքոսի (224–187), Հռոմի իբր թշնամի անոր դէմ կռուած էր, սակայն շնորհ գտած էր Հռոմի առջեւ երբ անիկա յաղթած էր Անտիոքոսի և Ասիոյ բազմաթիւ թագաւորութիւնները իր գերիշխանութեան տակ առած։

Արիարաթ Դ. զաւակն էր Արիարաթ Գ.ի և Անտիոքոսի աղջկան Անտիոքիսի, որուն համար Դիոտորոս Սիկիլիացի կ'ըսէ թէ «ասիկա խիստ նենգամէտ կին մըն էր: Զաւակ չունենալով երկու հատ ստութեամբ ստեղծեց առանց իր ամուսնոյն գիտութեան, Արիարաթէս եւ Հոլաբեռնէս: Ժամանակ մը յետոյ յղի եղաւ եւ ծնաւ ամէն ակնկալութեան հակառակ երկու աղջիկներ եւ որդի մը Միհրդատ անուն: Այն ատեն յայտնեց իր ամուսինին իր խաբէութիւնը ի մասին տղայոց որոնցմէ անդրանիկը կը գտնուէր Հռոմ եւ կրտսերը ի Յոնիա, որպէսզի չվիճին գահուն շուրջը օրինաւոր զաւակին հետ: Միհրդատ հասած ըլլալով չափահասութեան, փոխեց նաեւ իր անունը Արիարաթէսի: Ան ստացած էր յունական դաստիարակութիւն մը եւ կը յարգուէր իր անձնական յատկութիւններով: Կը սիրէր շատ իր հայրը, որմէ նոյնպէս շատ սիրուած էր: Այս գորովը այնքան մեծ էր որ հայրը կ'ուզէր անոր տալ իշխանութիւնը, բայց տղան մերժեց, ըսելով որ պիտի չթագաւորէր երբեք իր ծնողաց կենդանութեան: Արիարաթէս (Գ.) մեռաւ, Միհրդատ (= Արիարաթէս Դ) ժառանգեց թագաւորութիւնը եւ արժանի հանդիսացաւ իր ընթացքով եւ յառաջդիմութեամբ՝ փիլիսոփայութեան մէջ, ամէնամեծ ներբողներու»:

Արիարաթէս Դ. ամուսնացած էր Պերկամոնի Եւմէնէս թագաւորին աղջկան հետ և շնորհիւ անոր պաշտպանութեան ստացած էր կէսը այն տուգանքին որուն ենթարկուած էր Անտիոքոս և ճանչցուած բարեկամ Հռոմէական ժողովուրդին։

Փոքր Ասիական այս պետութիւնները չափազանց միամիտ գտնըւած են Հռոմի լուծին այնպէս կամաւորապէս ենթարկուելով, առանց զգալու այն վտանգը որ այս ինքնակամ յարումը կ'սպառնար իրենց։

Միայն Փառնակ Պոնտոսի թագաւորն էր որ կրցաւ նախատեսել Մագնեսիոյ պարտութեան հետեւանքները, և Հռոմի Ասիոյ մէջ զօրանալուն անխուսափելի վտանգները։ Ուստի Հռոմի Ասիոյ մէջ տեղաւորման հակառակիլ ուզեց։

Հռոմի դէմ այս պայքարը յաջողութեամբ առաջ տանելու համար, ուրիշ միջոց չի կար եթէ ոչ նուաճել և իր ազդեցութեան տակ ունենալ Փոքր Ասիան։

Հետեւաբար Փառնակ 184ին սկսաւ աշխարհակալութեան։ Նուաճեց Պափլագոնիոյ Սինոպ քաղաքը, և ըրաւ իր մայրաքաղաքը և ապա յարձակեցաւ Պերգամոնի Եւմէնէս, ինչպէս նաեւ Կապադովկիոյ Արիարաթ թագաւորներու երկիրներուն վրայ և անոնցմէ մասեր գրաւեց։

Եւմէնէս և Արիարաթ Հռոմի կը գանգատին։

Հռոմ իր կողմէն քննիչներ կը ղրկէ Ասիական իշխաններու ներքին վէճերը քննելու համար (Asie Mineure էջ 331–332)։ Արդարեւ անոնք կը ջանան վէճը կարգադրել սակայն Փառնակ կը մերժէ այս միջամտութիւնը։

Այն ատեն Պերգամոնի Եւմէնէս, և Կապադովկիոյ Արիարաթ և



Բիւթանիոյ Բրուսիաս թագաւորները Հռոմի քաջալերութեամբ հաւաքաբար կը յարձակին Պոնտոսի վրայ, որուն թագաւորը «Փառնակ շփոթեցաւ եւ յանձն առաւ որեւիցէ պայմանով ընդունիլ խաղաղութիւն կնքել» (180) (Պոլիբիոս) և ծանր տուգանքներու ենթարկուեցաւ։

Այս դաշինքը որ գրեթէ Փոքր Ասիոյ բոլոր տէրութիւնները կը համախմբէր Հռոմի Հասարակապետութեան հովանիին տակ, հոն կ'առաջնորդէր նաեւ Կապադովկիոյ թագաւորները որ այս թուականէն յետոյ իրենց ճակատագիրը կապեցին Հռոմի և օժանդակեցին անոր՝ Սելեւկեանց դէմ մղած պայքարին։

Կապադովկիա իր անձնուիրութեամբ և յարումովը դէպի Հռոմ նշանաւոր հանդիսացաւ։

Կապադովկիա դարձաւ բարեկամ Հռոմի և Պերգամոնի, այնքան անկեղծ և հաւատարիմ որքան եղած էր երբեմն Անտիոքոսի և Գաղատացւոց։

Որչափ որ յաճախ դառն փորձառութիւններ ունեցաւ, որչափ որ անընդհատ նեղուեցաւ Պոնտոսէն, Փոքր Հայոցմէն և Գաղատացիներէն. որչափ ալ Հռոմ երբեմն նոյնիսկ անամօթաբար ապերախտ գտնուեցաւ իրեն, Կապադովկիա անայլայլ հաւատարմութեամբ կապուած մնաց Հռոմի և ասով ժամանակ մը Ասիական փոքր պետութեանց մէջ առաջին տեղը բռնեց։ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 37)։

Իր բարեկամութիւնը անձնուիրութենէն և հաւատարմութենէն աւելի բան մը, աւելի սրտական նկարագիր մը ունեցաւ նոյնիսկ իր սկզբնաւորութենէն։

Առաջին Կապադովկիոյ թագաւորը՝ որ Հռոմի դաշնակիցը ըլլալու փառքը ստացած էր՝ Արիարաթ Դ. (220-166) այնքան ստրուկ եղաւ որ Հռոմ ղրկեց իր անչափահաս զաւակը պատուիրակութեամբ մը որ կը յայտարարէր թէ իրենց տէրը, կը փափաքի որ այս դեռատի իշխանը Հռոմի մէջ դաստիարակուի, որպէսզի ի մանկութենէ վարժուի Հռոմէական բարքերուն և կապուի բարեկամութեամբ Հռոմայեցւոց հետ։ Անոնք խնդրեցին, ո՛չ միայն պահպանութիւնը ասպնջականին, այլ նաեւ դրին զայն նոյնիսկ տեսակ մը հանրային հովանաւորութեան և խնամակալութեան տակ։ Հռոմ այս փափաքին մեծ փութկոտութեամբ ընդ առաջ գնաց (Տիտոս Լիւիոս, գիրք ԽԲ. գլ. 18, Asie Mineure էջ 338)։

Ինչպէս կը տեսնուի այս իշխանը Հռոմէացւոց յարելէ յետոյ միշտ եղած էր աւելի հլու և աւելի հաւատարիմ դաշնակից մը։ Իր իշխանութեան վերջին օրերը իր թագաւորութիւնը խռովուեցաւ Գաղատացւոց հետ վէճերով Trocmes ցեղին պատճառով, որ չկրնալով բռնաբարել Արիարաթի պետութեան սահմանները, փորձեց անոր դէմ լարել Հռոմի Ծերակոյտը։ M. Jupius ղրկուեցաւ Կապադովկիա։ Թագաւորը այնքան լաւ ընդունելութիւն մը ըրաւ և ինքզինքը այնքան լաւ արդարացուց որ դեսպանը Հռոմ դարձաւ և մեծ ներբողներ ըրաւ։ (Պոլիբիոս Ա. ԼԱ. Հմմտ. Asie Mineure էջ 353)։

Այս թագաւորին յաջորդեց իր տղան որ կոչուեցաւ Արիարաթ Ե. Եւսեբէս մականուանեալն Փիլոպատոր (Philopator = հայրասէր) (166–130) վասնզի իր հայրը ուզելով, ի նպաստ իրեն հրաժարիլ, մերժեց կ'ըսեն և ուզեց հնազանդիլ որքան ատեն որ հայրը ողջ էր (Asie Mineure էջ 353)։ Անիկա հազիւ գահ բարձրացած, աճապարեց պատուիրակու-

թիւն մը ղրկել Հռոմ վերանորոգելու համար դաշնակցութիւնը և յայտնելու համար Ծերակոյտին հաւաստիքը իր եռանդին և պատրաստակամութեան։

Հռոմ իր դեսպաններուն ըրաւ փառաշուք ընդունելութիւն մը։ Անոնց դարձին, թագաւորը այն համոզումին եկաւ, որ իր գահը ամուր էր քանի որ ստացած էր Հռոմէացւոց բարեկամութիւնը, և շնորհակալութեան զոհեր մատոյց այս երջանիկ իրողութեան համար (Պողիբիոս 1, ԼԱ. Հմմտ. Asie Mineure էջ 353)։

Արիարաթ Ե. իրապէս ազնիւ իշխան մըն էր, որուն արթուն, հաստատուն և անշահասէր վարմունքն դրացիներուն ակնածանք կ'ազդէր։

Անիկա զինակցեցաւ Ծոփաց կամ Արեւմտեան Հայոց Զարեհ թագաւորին հետ, որ նոյնպէս Սելեւկեան տիրապետութենէն անջատուած էր։

Արիարաթ Ե. պարկեշտ զինակից մը եղաւ և չուզեց Հայաստանի թագաւորին Արտաշէս Ա.ի (Արտաքսիաս) կողմէ սարքուած դաւադրութեան մասնակցիլ և նոյնիսկ Զարեհի մահէն յետոյ անոր որդիները սպաննելով՝ անոր երկիրը իրենց միջեւ բաժնելու առաջարկը ընդունիլ։ (Տեսնել այս դէպքի մասին Դիոտոր Սիկիլիացի, ի Քաղուածս Հենրիկոս Վաղինեկայ էջ 325 կամ Եղիշէ Դուրեան Ազգ. պատմ. էջ 51–52, Պողիբիոս ԼԱ. 15 ա. Կ. Ց. Բասմաջեան, Իսկական պատմ. Հայոց էջ 147 և Հ. Սահակ Վ. Տէր Մովսէսեան Պատմ. Հայոց Ա. Հտ. 1922 էջ 223)։

Ինչպէս Թ. Րէյնախ (Միհրդատ Եւպատոր) կ'ըսէ Ծոփաց թագաւորութիւնը Քր.է առաջ Բ. դարուն կէսին նուաճուած պիտի ըլլար եթէ Արիարաթ Ե. անոր հզօր նեցուկ մը չի հանդիսանար անշահախնդրօրէն։ (Գարագաշեան ՔնՆ. Պատմ. Բ. էջ 130, Լէօ Հայոց Պատմ. էջ 388)։

Արիարաթ Ե. իվարձ իր ընծայած պաշտպանութեան ստացաւ միայն Տոմիսա կամուրջագլուխ քաղաքը, Եփրատի վրայ, որուն դիրքը զինուորական և առեւտրական տեսակէտով շատ կարեւոր էր, իբր անցք կարաւաններու որոնք կ'երթեւեկէին Ալիսի և Արգէոսի միջեւ, առեւտրական հին պողոտային վրայ որ Մելիտինէէն կուգար և Եփրատը կ'անցնէր և մինչեւ Ամիտա կ'երկարէր, և որ իբր միջազգային վաճառականութեան կարեւոր երակ մը, աշխոյժ գործունէութեան մէջ էր նաեւ այդ դարերուն (Ստրաբոն ԺԲ. 2. 1. և ԺԴ. 2. 29 նոյնպէս Թ. Րէյնախ Միհրդատ Եւպատոր, Գարագաշեան, ՔնՆ. Պատմ. էջ 131, Ե. Տիշոյեան, Հայաստանի Կոչնակ, 1933, էջ 1064)։

Այս կերպով Արիարաթ Ե. Կապադովկեան ազդեցութիւնը կը տարածէր մինչեւ Տիգրիսի ափն ու Պրոպոնտոսի ծովեզրը (Zimmerer ՀԱ. 1930 էջ 110)։

Անիկա Ծերակոյտին ղրկեց պսակ մը 10,000 ոսկի արժէքով (Asie Mineure էջ 354)։

Տիբերոս Գրակքոս որ Ասիայէն կը դառնար, նկատի առաւ այն փութկոտութիւնը որով ընդունուած էր Կապադովկիոյ մէջ։ Ծերակոյտը վարձատրեց թագաւորին եռանդը անոր ղրկելով ծերակուտականներու յատուկ փղոսկրէ գաւազան մը և փղոսկրեայ գահ։ (Պողիբիոս ԼԲ. Հմմտ. Asie Mineure էջ 354)։

Սակայն հակառակ Հռոմի պաշտպանութեան անիկա չկրցաւ անվրդով մնալ իր գահուն վրայ։ Որոփեռնէս անուն մէկը որ ինքզինքը կը համարէր Կապադովկիոյ վերջին թագաւորին անդրանիկ



որդին, իբր թէ իր մօրը Antiochide-ի կողմէ իր տղայութեանը գաղտնի Հռոմ ղրկուած, իր թագաւորութեան իբր մրցակից երեւան եկաւ յանկարծ, թելադրութեամբ Սելեւկեան Դիմետրիոս Ա. թագաւորին (162–150) որ զանազան պատճառներով զայրացած էր Արիարաթի դէմ։

Որոփեռնէս պաշտպանուած Սուրիոյ թագաւորէն՝ յաջողեցաւ տապալել իր կարծեցեալ եղբայրը, որ անմիջապէս իր հովանաւոր պետութեան մայրաքաղաքը՝ Հռոմ փութաց 158ի ամառուան վերջերը։

Երբ Julius Sextius իր պաշտօնակիցին հետ գործի ձեռնարկեց, Կապադովկիոյ դժբախտ թագաւորը, իր արգահատելի վիճակին համապատասխան կերպարանքով մը և հագուստներով անոնց ներկայացաւ։

Միւս կողմ Դիմետրիոս նաեւ Հռոմ դեսպան ղրկած էր, երկու դեր կատարելու համար հաւասարապէս, այն է պաշտպանել ինքզինքը ընդդէմ Արիարաթի և զայն զրպարտել անգթօրէն։

Դեսպաններ ղրկած էր նաեւ Որոփեռնէս անոնց պաշտօն տալով թագ մը տանելու և հին դաշնագրութիւնը որ ընդմէջ Հռոմի և Կապադովկիոյ գոյութիւն ունէր վերանորոգելու, բայց մանաւորապէս ընդդիմախօսելու համար Արիարաթի և զայն ամբաստանելու կամ անոր գանգատներուն պատասխանելու համար։

Արդէն, մասնաւոր բանակցութեանց մէջ, Որոփեռնէսի ներկայացուցիչները Արիարաթէն աւելի տպաւորութիւն կը ձգէին վասնզի բազմաթիւ էին մէկու մը դէմ և իրենց չքախումբին փայլը անկեալ թագաւորին խեղճութեան հետ հակապատկեր մը կը ներկայացնէր։

Բայց մանաւանդ անոնք գերազանցեցին հրապարակային ատեանի մը մէջ, վասնզի կը համարձակէին ամէն ինչ ըսել, լրբօրէն պատասխանելով ամէն բանի, առանց երբեք որ իրենց սուտը կարենային ապացուցանել, ի բացակայութեան պաշտպանի որ զիրենք հերքէր Արիարաթին ի նպաստ։

Տեսնելով իրենց յաջողութիւնը, որ իրենք տգիտութեամբ ձեռք կը բերէին, չփացան և կարծեցին թէ ամէն ինչ յաջող պիտի ընթանար (Պողիբիոս ԼԲ. գլ. 20, Asie Mineure էջ 355)։

Բայց կը սխալէին։ Արիարաթ շնորհիւ Պերկամայի Ատթալ Բ. թագաւորին(1) (158–138) օգնութեան, մտաւ շուտով Կապադովկիա (Պողիբիոս, ԼԲ. Գլ. 23)։

Հռոմ այս անգամ հարկադրուած միջամտեց վէճին և չուզելով որ բոլոր Կապադովկիան պատկանի Որոփեռնէսի պահանջեց որ Արիարաթ բաժնէ իր թագաւորութիւնը իր կարծեցեալ եղբօրը հետ, (Ապպիանոս Սուր, Գլ. 47) որ չկրցաւ երկար ատեն պահել այս բախտախնդրութեամբ ստացած գահը (Պողիբիոս) վասնզի 154ին Արիարաթ Ե. կը յիշուի միակ թագաւոր Կապադովկիոյ (Պողիբիոս, ԼԲ. Գլ. 12, Asie Mineure, էջ 355)։

Այսպէս Արիարաթ Ե. վերստին տիրացաւ Կապադովկիոյ գահուն

---

(1) Ատթալ Բ. Փիլատելփոս յաջորդած էր Եւմէնէսի († 159) իր եղբօրը, իբր խնամակալ անոր որդւոյն որ յետոյ Ատթալ Գ. անունով պիտի թագաւորէր և իրմով պիտի վերջանար Պէրկամոնի թագաւորութիւնը։ Ատթալ Բ.ի Արիարաթի ընծայած այս օգնութիւնը կը նկատուի փայլուն ապացոյց մը իր քաղաքական լայն հայեցողութեան և կարողութեան։ (տես Asie Mineure, էջ 355)։

և իբր անձնուէր դաշնակիցը Հռոմի անոր Ասիական Նահանգին մէջ պատահած շփոթութեանց մէջ եղաւ կարեւոր օժանդակ մը, և վերջապէս զոհ մը իր անձնուիրութեան։ Պերգամոնի Աթթալ Հայրասէր (Philopator) թագաւորը (138-133) իր իշխանութիւնը կը կտակէ Հռոմի։ Այս անսովոր արարքը առաջ կը բերէ Եփեսոսի մէջ գժգոհութիւն։ Այս ընդհանուր գժգոհութենէն կ'օգտուի Արիստոնիկոս, ապօրէն զաւակը Եւմէնէսի և Եփեսոսցի նուագածուի մը աղջկան և կը տիրանայ շատ մը քաղաքներու հակառակ Հռոմի դաշնակից Բիւթանիոյ և Կապադովկիոյ թագաւորներու բերած աջակցութեան և օգնութեան։ (Asie Mineure, էջ 359) որոնց շնորհիւ վերջապէս Հռոմ յաղթեց Արիստոնիկոսի (130) և Պերգամոնի թագաւորութեան մէկ կարեւոր մասը «Ասիոյ նահանգ» անունով ուղղակի Հռոմէական Նահանգի վերածեց (129)։ Արիարաթ Ե. նոյնիսկ մեռաւ այս պատերազմին մէջ (130), և Կապադովկեան թագաւորներու այս ամէնէն նշանաւորը և ամէնէն ակնածելին այսպէս զերծ չմնաց դժբախտութիւններէ և Հռոմի նկատմամբ իր ցոյց տուած միամիտ անձնուիրութիւնը պատժուեցաւ, վասնզի Հռոմ իսկ դաւեց իրեն դէմ։ Ասով հանդերձ անիկա միշտ մնաց հաւատարիմ Հռոմի և մեռաւ նոյնիսկ անոր հաշւոյն կռուած ատեն։

Իր մահէն յետոյ սկսան խռովութիւններ՝ որոնք պիտի վտանգէին Կապադովկիոյ անկախութիւնը, հակառակ անոր որ թագաւորութիւնը աւելի կ'ընդարձակուէր, վասնզի Հռոմ իր անձնուէր դաշնակիցին որդիներուն թագաւորութեան վրայ կ'աւելցնէր Լիկայոնիան և Կիլիկիոյ ինչ ինչ մասերը։

Հռոմը այս շնորհը կ'ընէր Կապադովկիոյ վասնզի անիկա կէս դարէ ի վեր այնքան սերտիւ փարած էր Հռոմէական պետութեան և իր թագաւորը գրեթէ Ծերակոյտին ներկայացուցիչն էր այդ երկրին մէջ (Asie Mineure. էջ 362)։

Ասով հանդերձ ընկճուեցաւ Կապադովկիա վասնզի ներքին կռիւներ առիթ ստեղծեցին դրացիներու միջամտութեան։

Թերեւս այս անկման մէջ մեծ դեր ունեցաւ Յունական քաղաքակրթութեան թափանցումը դէպի Կապադովկիա աշխարհը որ մինչեւ այն ատեն (այսինքն Արիարաթ Դ.ի) անծանօթ յունաց, եղաւ օրեւան մշակուած մարդոց», ինչպէս կ'ըսէ Դիոտորոս Սիկիլիացի։

Այս թափանցումը գործն էր Արիարաթ Դ.ի և մանաւանդ Արիարաթ Ե.ի, այս յարգելի ու լուսամիտ իշխանին, որ սնած՝ յոյն գրականութեամբ զարգացուց հելլենականութիւնը իր պետութեան մէջ։

Ասիա արդէն Աղեքսանդրի աշխարհակալութեան թուականներէն սկսեալ ենթարկուիլ սկսած էր յոյն մշակոյթին ազդեցութեանը։ Մասնաւորապէս յոյն լեզուն տիրապետել սկսաւ բովանդակ Փոքր Ասիոյ մէջ։

Մասնաւորապէս Սելեւկեանք մեծ դեր կատարեցին Յունական քաղաքակրթութեան Արեւելքի մէջ տարածման գործին մէջ, իրենց հիմնած բազմաթիւ քաղաքներով և անոնց տուած Հելլենական կազմակերպութեամբ։

Դժբաղդաբար Յունական քաղաքակրթութեան շուտով կը լծորդուէին Արեւելեան պերճանքը և ասիական մոլութիւնները, որոնց կը



նպաստէր հարստութիւնը որ առեւտրական ուղիները կը հոսեցնէին և բարձր տուրքերը կը կուտակէին։

Ամէն տեսակի հաճոյքները և մոլութիւնները տեղաւորուած էին Սելեւկեանց արքունիքին մէջ և իրենց կազմալուծող և անբարոյացընող ազդեցութիւնը կ'ունենային ժողովուրդին վրայ։

Երբեք ստրկամտութիւնը աւելի անարգ ձեւով մը չէ արտայայտուած, ոչ մէկ տեղ հպատակները չեն դիջանած այդքան անպատուաբեր շողոքորթութեան որքան Սուրիական թագաւորութեան մէջ։

Չէին գոհանար միայն տաճարներ և բագիններ կանգնելով իրենց վեհապետներուն և անոնց աստուածային պատիւներ ընծայելով, այլ անոնց կուտային նոյնիսկ «Աստուած» մականունը՝ ինչպէս ըրած էին Անտիոքոս Բ.ի։

Կրօնքն իսկ կը վատասերէր Յունական-Արեւելեան խառնուրդ պաշտամունքի մը մէջ։

Արիւնայի արարքները, կիներու և հոմանիներու տիրապետութիւնը, բարքերու ապականութիւնը և ընդհանուր ինկածութիւնը, յարափոխութիւններով լի պատերազմներու հետ որ Եգիպտոսի, Փոքր Ասիոյ ժողովուրդներուն և ըմբոստացած արեւելեան նահանգներուն դէմ մղեց ան, կը կազմեն ամբողջ Սելեւկեանց պատմութիւնը, որ 301էն մինչեւ 190, մէկ դարէն աւելի ժամանակամիջոց մը՝ այնքան սերտ աղերս ունեցաւ Կապադովկիոյ հետ։

Սակայն, տափաստաններէ և լեռներէ շրջապատուած, ծովէն հեռու ինկած՝ բայց ասոր փոխարէն ամէն կողմէ ամուր բերդերով ծածկուած Կապադովկիան Փոքր Ասիոյ այն մասն եղաւ որ ամէնէն ուշ բացուեցաւ յունական քաղաքակրթութեան և ենթարկուեցաւ քաղաքային վարչութեան։ Երկուքն ալ ներմուծեց Արիարաթէս Ե.։ Այս իշխանը իր փոթորկալից երիտասարդութեան ժամանակ շատ աշխարհներ շրջած էր, Իտալիա և Յունաստան այցելած, ուր աթենական քաղաքացիութեան իրաւունքն ստացած էր և Կարնէադէս փիլիսոփային հետ սերտ կերպով բարեկամացած։ Իր արքունիքը կանչեց յոյն արուեստագէտներ և գրագէտներ, և իր պետութեան երկու մեծ տեղերէն՝ Մաժակ ու Տիանա՝ ստեղծեց քաղաքներ յունական նախատիպին համեմատ, որոնց առաջինը մինչեւ անգամ Քարոնադասի օրէնքն(1) ընդունեց։

Բայց յունական քաղաքակրթութեան հետ Կապադովկիա մտան

---

(1) Charondas, յոյն օրէնսդիր ծնած Սիկիլիոյ Catane քաղաքը, Քր.է առաջ է. դարուն։ Տուած է օրէնքներ իր հայրենիքի և Մեծ Յունաստանի (Հարաւ Իտալիոյ) ուրիշ քաղաքներուն։ Այս օրէնքները, չափածոյ գրուած, կը հաստատէին ազնուապետական սահմանադրութիւն մը։ Ըստ Դիոտորոս Սիկիլացիի Քարոնդաս անձնասպան եղաւ որովհետեւ զէնքերով եկած էր ժողովի մոռացմամբ հակառակ իր օրէնքներու յօդուածներէն մէկուն։

Իր օրէնքներէն մի քանի հատուածները, որոնք պահուած են մի քանի հեղինակներու կողմէ, շատերու համար տարակուսելի վաւերականութիւն մը ունին։ Անոնք հաւաքուած են Heyne-ի կողմէ, իր «Opuscula academica»ին մէջ (Goettingue, 1763)։

անմիջապէս նաեւ յունական մոլութիւնները։ Որոփեռնէս բռնաւորը՝ որ իբր թէ Արիարաթէսի եղբայրն էր, Պրիենէէն՝ ուր մեծցած էր, հետը բերաւ յոնիական թուլամորթութիւն ու բաղձանք անվերջ զուարճութեանց և անամօթ տեսարաններու։ Դէպի մայրամուտ դիմող հելլենականութեան այս զեղծումներուն շուտով ընտելացան Գամիրք, և այսպէս կապադովկեան ազնուականութիւնը հասունութենէն առաջ փտութիւնը ճանչցաւ։

Այս ազնուականներու մասին՝ որոնք հարստութեամբ արքայէն ալ գրեթէ գերազանց էին, կը խօսի Կիկերոն թէ Արքային երկու կամ երեք բարեկամները շատ հարուստ են, բայց այնպէս խնամով կը պահեն իրենց ունեցածը ինչպէս ես կամ դուն։

Ծանօթ է Ովրատիոսի այն տողը թէ Կապադովկիոյ թագաւորը հարուստ է գերիներով՝ բայց ինքը դրամ չունի (Zimmerer. ՀԱ. 1900, էջ 110)։

Բարքերու այս ապականութիւնը շուտով զգալի պիտի ընէր ինքզինքն, Արիարաթ Ե.ի մահէն անմիջապէս յետոյ, երբ ապականութեան օրինակը կուտար նոյնիսկ արքունիքը՝ ոճրագործ և որդեսպան մօր մը յայտնութեամբ որ նոյնինքն Արիարաթ Ե.ի կինն էր։

Երբ Արիարաթ Ե. Արիստոնիկոսի դէմ մղուած կռիւին մէջ մեռաւ ձգեց վեց որդիներ։ Իրենց մայրը Լաւոտիկէ(1) թունաւորեց իր հինգ որդիները յաջորդաբար «որոնք իրեն համար շատ շուտ չափահաս կ'ըլլային» (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 110) Հռոմ որ Արիարաթ Ե.ի անձնուիրութիւնը վարձատրելու համար անոր պետութեան վրայ աւելցուցած էր Լիկայոնիան և Կիլիկիան, արդարեւ «իր դաշնակցին որդիներու հետ աւելի ազնիւ կը վարուէր քան իրենց մայրը, վասնզի մինչ Հռոմ անոնց մանկութեան հասակին մէջ կ'ընդարձակէր անոնց տէրութիւնը՝ իրենց մայրը կեանքերնին կը բառնար»: (Յուստինոս, տես Գարագաշեան Քննական Պատմ. Բ, հատոր, էջ 111)։

Լաւոտիկէ կը վախնար որ իր զաւակները երբ խելահաս դառնային պիտի կորսնցնէր իր իշխանութիւնը ուստի զանոնք չափահաս չեղած կը թունաւորէր։

Այսպէս արդէն հինգը մահացուցած էր և վեցերորդն ալ նոյն վախճանը պիտի ունենար ապահովաբար եթէ ըմբոստացած ժողովուրդը չպատժէր այս որդեսպան մայրը չարամահ (Յուստինոս)։

Այս վեցերորդ տղան թագաւորեց Արիարաթ Զ. անունով (130)։

Ճիշդ միեւնոյն տարին Պոնտոսի գահը կը բարձրանար Միհրդատ Զ. Եւպատոր (130–63), որ իր կարգին պիտի երկնէր և պիտի ջանար գործադրել այն ծրագիրը որ իր նախորդներէն Փառնակ, ինչպէս նաև Աննիբալ և Անտիոքոս Մեծ յղացած՝ սակայն գործադրութեան մէջ վրիպած էին։ Այդ ծրագիրն էր միացնել ասիական պետութիւնները մեծ դաշնակցութեան մը մէջ և Հռոմի լուծէն փրկել Ասիան։

(1) Այս անունով կը յիշէ M. Ph. Le Bas (տես Asie Mineure, էջ 366) մինչ Zimmerer իր նախայիշեալ հմտալից գործին մէջ այս կինը կը կոչէ Նիսա. (տես ՀԱ. 1900, էջ 110)։ Յուլիոս Փլորոս պատմագիրը որ ժամանակով շատ հեռու չէ, Ա. դարուն ապրած ըլլալով, ինքն ալ Լաւոտիկէ անունով կը ճանչնայ այս կինը։



Ուստի նախ ջանաց բարեկամութիւններ շահիլ դրացիներուն մէջ, և ամէնէն առաջ նուաճեց Փոքր Հայքը(1) և Կողքիսն ու պատկառելի ոյժ մը դառնալէ յետոյ, դաշնակցեցաւ Բիւթանիոյ Նիկոմէտ թագաւորին հետ և մտաւ Պափլագոնիա և զայն բաժնեց իր դաշնակցին հետ։



ԴԻՄԱՆԿԱՐ ՄԻՀՐԴԱՏ Զ. ԵՒՊԱՏՈՐ ՊՈՆՏԱՑԻԻՆ
(Առնուած Ֆրանսայի թանգարանը պահուած դրամէն)

Հռոմի Ծերակոյտը իմանալով որ երկու թագաւորները գրաւած են Պափլագոնիան, պատգամաւորներ կը ղրկէ անոնց, հրամայելով որ զայն իր առջի տիրոջ դարձնեն։ Միհրդատ, ամբարտաւանութեամբ կը պատասխանէ թէ իր հայրը ժառանգած էր այդ թագաւորութիւնը և զարմանք կը յայտնէ թէ ինչ որ հօրը կը պատկանէր առանց ընդդիմութեան իր որդւոյն չէին թողուր։ Եւ արհամարհելով սպառնալիքները կը տիրէ նաև Գաղատիոյ։ Իսկ Նեկոմէտ չգտնալով բարուրանք կը խոստանայ տալ Պափլագոնիան իր տիրոջը, և փոխելով իր զաւկին անունը Պիլեմէնի, որ հասարակաց անունն էր Պափլագոնիոյ թագաւորներուն՝ կը պահէր երկիրը այդ պիտակ անունով, իբր թէ այս ձեւով դարձուցած ըլլար երկիրը բնիկ թագաւորներուն։

Այսպէս ծաղր ու ծանակ եղած պատուիրակները կը դառնան Հռոմ։

Միհրդատ յետոյ առաջարկեց Կապադովկիոյ Արիարաթ Զ. թագաւորին զինակցիլ իրեն հետ և անոր կնութեան տուաւ իր Լաւոտիկէ քոյրը։ (Asie Mineure, էջ 366)։

Սակայն Կապադովկիացիք անձնուէր ու հաւատարիմ Հռոմի՝ Միհրդատի չյարեցան և ասոր համար էր որ Արիարաթ Զ. քանի մը տարի յետոյ սպաննուեցաւ Միհրդատի սպաներէն մէկուն Գորդիոսի (Gurdius) կողմէ (Նոյն)։

Լաւոտիկէ, կարծելով որ իր եղբայրը պիտի չխնայէր նաեւ իրեն, օգնութեան կոչեց Բիւթանիոյ Նիկոմէտ թագաւորը, որուն հետ ամուսնացաւ և Կապադովկիան անոր իշխանութեան տակ դրաւ։

Միհրդատ անմիջապէս իբր թէ քոյրը մեղքնալով անոր օգնութեան կը հասնի, զօրք ղրկելով որպէսզի Կապադովկիայէն դուրս վանէ Նիկոմէտը, ինչ որ կը մերժէ Լաւոտիկէ որ արդէն ամուսնացած էր անոր հետ և այսպէս դիրք բռնած էր եղբօրը դէմ։ Կապադովկիա այս կերպով ոչ միայն չէր ուզեր գործակցիլ Միհրդատին այլ կազմելով Բիւթանիոյ հետ միութիւն մը կ'սպառնար քանդել Պոնտոսի թագաւորին մեծ ծրագիրը։

Ուստի Միհրդատ զայրացած մտաւ Կապադովկիա և անկէ վանեց Նիկոմէտի բանակը և թագաւորութիւնը տուաւ իր քեռորդիներէն անդրանիկին, որ Արիարաթ Է. Ֆիլոմիտոր անունով գրաւեց Կապադովկիոյ գահը։ Բայց անմիջապէս որ զայն թագաւոր հռչակեց հար-

(1) Հոն կ'իշխէր այն ժամանակ Անդիպադրոս Սիսիս թագաւորը որուն տէրութիւնը կը տարածուէր Եփրատի արեւմտեան և Մելասի հիւսիսային կողմը. (Ալեքսանդրեան Անտրէաս, Գեր. Պատմ. Սեբաստիոյ, էջ 33)։

կարգեց աքսորէ ետ բերելու Գորդիոսը որ անոր հայրը սպանած էր։ Միհրդատ կը յուսար թէ մանուկ թագաւորը ընդդիմանալով անոր դարձին գեղեցիկ պատրուակ մը ընծայած պիտի ըլլար իրեն պատերազմի, իսկ եթէ հաւանէր՝ կը խորհէր սպաննել նաեւ որդին՝ իր հօրը սպանիչին ձեռքով։

Մանուկ Արիարաթ հասկնալով Միհրդատի միտքը, և զայրացած տեսնելով իր հօրը սպանիչը աքսորէ բերուած իր մօրեղբօրը հրամանով, սկսաւ մեծ թուով զօրք հաւաքել։

Այս առթիւ է որ հաւանօրէն Կապադովկիա կոչում կ'ընէ Ծոփաց թագաւորութեան— որուն երբեմն ինքն օգնած էր— իրեն օգնութեան հասնիլ և անոր կը ծախէ Տոմիսա ամրոցը՝ որ երբեմն Արիարաթ Ե. ի վարձ իր ընծայած օգնութեան ստացած էր։ (Ստրաբոն, ԺԲ. 2. 1. Թէոդոր Րէյնախ Միհրդատ Եւպատոր, Գարագաշեան, ՔՆՆ. Պատմութիւն, Բ. հատ. էջ 132)։

Միհրդատ հաւաքեց նաեւ 80.000 հետեւակ, 10.000 հեծեալ և 600 գերանդազէն կառքեր, բայց տեսնելով որ իր քեռորդին, դրացի թագաւորներէն օգնութիւն գտնելով, կը հանէր ոչ սակաւ ույժ քան իրը, կասկածելով պատերազմին ելքէն, կը դիմէ դաւաճանութեան և հրաւիրելով մանուկ թագաւորը տեսակցութեան անոր քով կ'երթայ դաշոյնը մէջքին վրայ ծածկելով, և գաղտնի խօսակցութեան մը պատրուակով՝ քեռորդին հեռացնելով իր մարդոցմէն կ'սպանէ զայն իր իսկ ձեռքովը երկու բանակներուն աչքին առջեւ (106)։ Ցետոյ Կապադովկիան կուտայ իր որդւոյն — որ ութը տարեկան էր — անոր տալով իրր անուն՝ Արիարաթ Ը. (106) և իրր խնամակալ կամ խորհրդական՝ Գորդիոսը։ Բայց Կապադովկիացիք տաղտկացած, Միհրդատի գործակալներուն անգթութիւններէն և պատճառած զրկանքներէն ըմբոստացան և մերժեցին Միհրդատի զաւակը, և կոչեցին իրենց վերջին սպանուած թագաւորին՝ Արիարաթ Է.ի եղբայրը և Արիարաթ Զ.ի երկրորդ զաւակը, «Ասիացւոց Աշխարհէն» — ըստ Ցուլիոս պատմագրին բացատրութեան որ նշանակելի է — ուր սնած էր և նոյնպէս Արիարաթ կը կոչուէր։

Սակայն անիկա չկրցաւ տիրանալ իր հօրը գահուն, վասնզի Միհրդատ շուտով զսպեց ըմբոստութիւնը։ Երիտասարդ իշխանը ստիպուեցաւ փախչիլ և քիչ յետոյ վիշտէն հիւանդանալով մեռաւ։

Բիւթանիոյ Նիկոմէտ թագաւորը անոր մահէն յետոյ կասկածելով որ գուցէ Միհրդատ, որ տիրած էր Կապադովկիոյ, ուզէ նաեւ Բիւթանիան գրաւել, երեւան հանեց գեղեցիկ տեսքով երիտասարդ մը, համոզելով որ յայտարարէ թէ ինքն Արիարաթ Զ.ի երրորդ զաւակն էր, — մինչ անիկա ունեցած էր երկու զաւակ՝ երկուքն ալ մեռած վերը յիշուած պարագաներուն տակ — և պահանջէ Հռոմի Ծերակոյտէն իր կարծեցեալ հօրը թագաւորութիւնը։

Նիկոմէտ միեւնոյն ատեն Հռոմ ղրկեց իր կինը Լաւոտիկէն՝ երբեմն Արիարաթ Զ.ի կինը, որպէսզի հաստատէ թէ ինքն երեք զաւակ ունեցած է Արիարաթէսէն։

Միհրդատ իմանալով այս նենգութիւնը իր կարգին աննկարագրելի ժպրհութեամբ Հռոմ կը ղրկէ Գորդիոսը Ծերակոյտին յայտնելու համար թէ մանուկը որ իր տէրը դրած էր Կապադովկիոյ գահուն վրայ որդին էր այն Արիարաթին որ մեռած էր Հռոմայեցւոց համար



ընդդէմ Արիստոնիկոսի կռուած ատեն։ Սակայն Ծերակոյտը տեսնելով որ երկու թագաւորներուն ալ նպատակն է յափշտակել Կապադովկիոյ թագաւորութիւնը պիտակ անունով մը և այնչափ լրբութենէ գայթակղեալ՝ երկուքին ալ հրամայեց լքել Կապադովկիան։

Բիւթանիոյ և Պոնտոսի թագաւորները արդարեւ հնազանդեցան Ծերակոյտի որոշման։

Սակայն իրական տուժողը Միհրդատն էր քանի որ ինքն տիրած էր Կապադովկիոյ, ուստի զայն համոզելու համար որ համակերպի Ծերակոյտի որոշման հարկ եղաւ որ Նիկոմէտէն ալ առնուի Պափլագոնիան։

Եւ որպէսզի երկու թագաւորներն ալ ատելութեամբ չլեցուին, տալով այլոց ինչ որ կ'առնուէր իրենցմէ, երկու ազգերուն ալ ազատութիւն տրուեցաւ և Կապադովկիա և Պափլագոնիա ազատ երկիրներ հռչակուեցան։

Կապադովկիացիք նախամեծար համարեցին կառավարուիլ թագաւորով մը։

Հռոմ արտօնեց որ անոնք մէկը ընտրեն։ Անոնք ընտրեցին Արիոբարզանը, բնիկ մը, որ հռչակուեցաւ թագաւոր և ճանչցուեցաւ բարեկամ և դաշնակից Հռոմի (96 Քր.է առաջ)։ (Հմմտ. Asie Mineure, էջ 366, Գարագաշեան ՔՆՆ, Պատմ. Բ. էջ 111-115)։

Արիոբարզանի գահակալութիւնը վերջ կը դնէր Միհրդատի ազդեցութեան և հեղինակութեան ի Կապադովկիա, ուստի Պոնտոսի խորագէտ թագաւորը խորհեցաւ իսկոյն իր կողմը շահիլ Հայոց Տիգրան թագաւորը որպէսզի անոր միջոցաւ տիրէ Կապադովկիոյ, առանց կորսնցնելու ո՛չ մարդ, և ոչ դրամ և ոչ ալ հարկադրուի պատրուակ փնտռելու ինքզինքն արդարացնելու Հռոմի առջեւ իր յարձակումին համար։ Ուստի Գորդիոսը ղրկեց դաշնակցութիւն մը կնքելու համար։

Գորդիոս մեծ յաջողութեամբ կատարեց իր պաշտօնը և կնքուեցաւ պաշտպանողական և յարձակողական գաղտնի դաշինք մը որ նուիրագործուեցաւ Միհրդատի աղջկան Կղէոպատրայի Տիգրանի հետ ամուսնութեամբ։

Մինչ այն, արդէն Տիգրան Հայոց թագաւորը օգտուելով Կապադովկիոյ մէջ պատահած խռովութիւններէն և պայքարներէն վերջ տուած էր Ծոփաց թագաւորութեան (94 Քր.է առաջ) սպաննելով Զարեհի սերունդէն Արտանէսը —քանի որ այլեւս այս երկրին պաշտպանը Կապադովկիա ի վիճակի չէր օգնելու— և եկած հասած էր Կապադովկիոյ սահմանները։

Միհրդատի հետ դաշնակցութեան կնքումէն յետոյ Հայերը անցան Եփրատը (93) առաջնորդութեամբ Գորդիոսի որ իրեն համար կուսակիցներ յաջողած էր շինել Կապադովկիոյ մէջ։

Արիոբարզան Ա. թագաւորը, անզօր, անակնկալի գալով, նոյնիսկ չփորձեց դիմադրութիւն, և իր գանձերը հաւաքելով ուղղակի գնաց Հռոմ։

Տիգրան Կապադովկիոյ մէջ պահապան զօրք և կուսակալ մը դրաւ (Յուստինոս ԼԲ. 3. Նաեւ Թ. Րէյնախ Միհրդատ Եւպատոր, Գարագաշեան ՔՆՆ. Պատմ. Բ. էջ 133) և կամ ինչպէս ուրիշներ կը հաւաստեն վերստին Կապադովկիոյ գահուն վրայ հաստատեց Միհրդատի որդին՝ այն

որ երբեմն (106-96) Արիարաթ Ը. անունով արդէն այդ գահուն վրայ բազմած էր։

Ինչպէս Թ. Ռէյնախ կը գրէ այս հնարքը գեղեցիկ էր սակայն Միհրդատ Հռովմէական Ծերակոյտին համբերատարութիւնը չարաչար գործածեց և պայքարը անխուսափելի դարցուց։

Արիոբարզանի փախուստի պարագան բաւական յուզում պատճառեց Հռոմի Ծերակոյտին անդամներուն և անոնց աչքին վտանգաւոր երեւցաւ Միհրդատի և Տիգրանի միջեւ հաստատուած նիզակակցութիւնը, վասնզի կրնար ընդհուպ Փոքր Ասիան Հռոմէական կալուած մը ըլլալէ դադրիլ, ուստի Ծերակոյտը անմիջապէս որոշեց զէնքի զօրութեամբ վերահաստատել Արիոբարզանը իր գահուն վրայ և այդ գործը յանձնեց Սիլլա զօրավարին որ արդէն մեծ համբաւ կը վայելէր, մրանգամայն պաշտօն տալով անոր կառավարել Կիլիկիան։

Սիլլա սակաւաթիւ զօրքերով կ'անցնի Տաւրոսը, և կուգայ կը հասնի Կապադովկիա, կը հալածէ Գորդիոսի զօրքերը և անոր օգնութեան փութացող Հայկական գունդերը, որոնք կը հետապնդէ մինչեւ Եփրատ ուր առաջին անգամ (92ին) կը հասնին Հռոմէական լէգէոնները (Թ. Ռէյնախ Միհրդատ Եւպատոր)։

Միհրդատ՝ այս կերպով ուղղակի կերպով կը պարտուէր և յուսախաբ կ'ըլլար, ըստ Թ. Ռէյնախի, Հայոց նիզակակցութենէն։

Սիլլա՝ Հռոմէական լէգէոնները մինչեւ Եփրատ մղելով գրաւած էր Կապադովկիան որուն գահուն վրայ կը վերահաստատէր Հռոմի հլու կամակատար Արիոբարզան Ա.ը, անկէ վանելով Արիարաթ Ը.ը (Պլուտարքոս Սիլլա 7)։

Սիլլայի յաղթութիւնը այսպէս պահ մը տկարացուց և զինաթափ ըրաւ Միհրդատը, որով և 91 տարւոյն սկիզբները Հռոմի տիրապետութիւնը Փոքր Ասիոյ վրայ դարձեալ ամրապնդուեցաւ։

Բայց որովհետեւ մէկ կողմէն նոյն 91 տարւոյն վերջերը, ընկերային պատերազմ պայթեցաւ Հռոմի մէջ, որ սաստկապէս զբաղեցուց Հռոմէական աշխարհը, և միւս կողմէ Սիլլա մեկնեցաւ, Միհրդատ օգուտ քաղելով այս պարագաներէն, վերստին ջանաց ամփոփել իր ուժերը։

Նորոգեց իր դաշինքը Տիգրանի հետ, պայմանաւ որ ստացուած յաղթութեանց մէջ հողերն ու քաղաքները Միհրդատի ըլլան, իսկ գերի, գանձ և այլ աւարները Տիգրանին մնան (Յուստինոս ԼԸ. 3)։

Երկու զօրավարներ, որ հաւանաբար հայ էին, Միհրաս (Միհրան) և Բագաւոս (Բագուաս), երկրորդ անգամ մտան Կապադովկիա և դարձեալ վտարանդի ըրին Արիոբարզանը, որ կրկին չհամարձակեցաւ կռիւ մտնել և նախընտրեց լքել իր երկիրը և փախչիլ կրկին Հռոմ (90)։

Կապադովկիոյ գահուն վրայ վերահաստատուեցաւ Հայ-Պոնտական դաշնակից հովանաւորութեան տակ Միհրդատի որդին՝ Գորդիոս-Արիարաթ։

Ճիշդ այդ օրերուն Միհրդատ ինքն ալ յարձակեցաւ Բիւթանիոյ վրայ և գահընկէց ըրաւ Նիկոմէտ թագաւորը որ իր համանուն հօր —Միհրդատի հակառակորդին և քեռայրին— յաջորդած էր և անոր տեղը դրաւ Նիկոմէտի եղբայրը՝ Սոկրատ որ Միհրդատի կուսակից էր և անոր դաշնակից դարձաւ (90)։

Նիկոմէտ ինքն ալ Արիոբարզանին պէս Հռոմ փութաց Ծերակոյտին պաշտպանութեան ապաւինելու համար։



Ծերակոյտը վճռեց այդ երկու թագաւորներուն վերահաստատութիւնը։

Այս պատճառով ղրկուեցաւ Մանիոս Աքուիլլիոսը (Manius Aquillius), անոր տրամադրութեան տակ դնելով թէ՛ այդ երկու թագաւորներուն և թէ՛ Ասիոյ Անթիհիւպատ Լուկիոս Կասսիոսի զինուորական զօրութիւնները։

Սակայն Միհրդատ ոչ միայն չուզեց դիմադրաւել կռիւի, այլ և ընդհակառակը, փութաց ետ կանչել իր որդին Կապադովկիայէն, իսկ Սոկրատը, որուն պաշտպան կեցած էր, սպաննել տուաւ։ Այսպէս, առանց ոեւէ ընդհարումի, անժառանգեալ թագաւորները տէր եղան իրենց գահերուն (89ի գարնան)։

Բայց Աքուիլիոսի արծաթասիրութիւնը նոր գրգիռ մը առաջ բերաւ։ Սա, իր բարեբաստ յաջողութեան իբր վարձ, սկսաւ մեծ գումարներ պահանջել Կապադովկիոյ և Բիւթանիոյ թագաւորներէն, և որովհետեւ այդ պահանջման գոհացում տալու համար անոնք բաւական դրամ չունէին, ստիպեց զանոնք յարձակիլ Միհրդատի սահմաններէն ներս և աւարել անոր երկիրը։ Նիկոմէտ միայն համակերպեցաւ և Պոնտացի գիւղացիներու կողոպուտներով յաջողեցաւ ընել այդ վճարումը։ Ի սկզբան բողոքեց Միհրդատ, բայց երբ տեսաւ որ Աքուիլիոս նենգամտութեամբ հնարք կը խորհէր վտանգելու իր բախտը, փայլակի արագութեամբ դրդեց բոլոր Արեւելքը, Վիրերը, Մարերը, Պարթեւները և նոյնիսկ Սկիւթացիները, եւայլն, և զինեց Արեւելքը ընդդէմ Հռոմի։

Պատերազմը սկսաւ սաստկութեամբ (88ի գարնան)։ Ջարդուեցան Բիւթանացւոց բանակները Ամնիասի մէջ և Նիկոմէտ հազիւ կրցաւ փախչիլ։ Հռոմէական բանակը 10,000 մեռեալ և 300 գերիներ կորսնցուց Պրոտոպաքիոնի մէջ՝ Նէոպտոլմէոս և Հայ Նեմանէսի (Ապպիանոս Պտմ. Միհր. ԺԹ.) հրամանատարութեամբ Պոնտական բանակին յառաջապահ զօրքին հետ կռուած ատեն և Աքուիլիոս միս մինակ գիշերանց անցաւ Սանգարիան և ապաստանեցաւ Պերգամոն և ապա Միտիլինէ (Միտիլլի)։

Միհրդատ, այս յաջողութենէն շլացած օրէ օր աւելի յանդուգն դարձաւ և ամէն բան ըրաւ ասիական ժողովուրդները գրգռելու համար Հռոմէացւոց դէմ, և վերջապէս բոլոր Փոքր Ասիան և Արշիպեղագոսի կղզիները իրեն հնազանդեցուց և Հռոմէական կուսակալին նստոցը՝ Պերգամոն իրեն մայրաքաղաք ըրաւ։ Յաջողեցաւ ձեռք անցընել Պամփիւլիոյ Հռոմէացի կուսակալը և Աքուիլիոսը, որ հրապարակային խայտառակութեանց ենթարկելէ յետոյ ըստ ոմանց (Կիկերոն յաղագս Մանիլեան օրինաց Ե. 11) հարուածներով զանեց, ըստ այլոց՝ (Պլինիոս ԼԳ. 48 և Ապպիանոս՝ Միհրդատ 21) հալած ոսկի լեցնելով բերանը սպաննեց, իբրեւ հաւակ աղետից պատերազմին (Եղիշէ Դուրեան Ազգ. Պատմ. էջ 67-68) և ի նախատինս Հռոմէական ագահութեան։ Սակայն աւելի սոսկալին ալ ըրաւ։ Եփեսոսէն հրաման ղրկեց իրմէն կախում ունեցող կառավարիչներուն և քաղաքներուն որ ջարդեն միեւնոյն օրը իրենց շրջանակին բոլոր Հռոմէացիները, ազատ կամ ոչ, առանց սեռի և տարիքի խտրութեան և անոնց դիակները կեր դարձնեն թռչուններուն, գրաւեն անոնց ինչքերը և տան անոնց կէսը սպաննողներուն և կէսը՝ թագաւորին։ Այս հրամանին համաձայն, 80էն

100 հազար մարդիկ, անպաշտպան կիներ և տղաք, պաղարեամբ սպանուեցան։ Նոյնպէս անիկա ահագին բանակով մը (500.000 հետեւակ և 40.000 ձիաւոր) և 400 նաւերու տորմիղով մը սպառնաց Հռոմէական տիրապետութեան ի Յունաստան, հոն զինուոր հանելով։

Հռոմ այլեւս անկարելի էր որ հանդուրժէր, ուստի վճռեց պատերազմը։ Կրկին Սիլլա հրամանատար անուանուեցաւ։ Սիլլա՝ Յունաստանէն վանելէ յետոյ Պոնտական բանակները, անցաւ Ասիա, և 89էն 85 (Քր.է առաջ) երկարատեւ կռիւ մը մղեց և երբ Հռոմ զինքն պաշտօնանկ ըրաւ և իր տեղը ղրկեց Վալերիոս Փլակկոսը, խոհեմութիւն համարեց Միհրդատի հետ հաշտութիւն կնքել Դարտանոսի մէջ (85), որուն համաձայն Պափլագոնիա պիտի մնար Պոնտոսի, սակայն Կապադովկիոյ Արիոբարզան և Բիւթանիոյ Նիկոմէտ թագաւորները պիտի դառնային իրենց գահերը։

Սակայն Սիլլայի մահէն (78) յետոյ, Տիգրան թելադրութեամբ Պոնտոսի թագաւորին և իր զինակիցին, Հայկական բանակով, Գ. և մեծագոյն արշաւանքը կը կատարէ դէպի Կապադովկիա և կրկին անկէ կը վանէ Արիոբարզանը և կը տիրէ անոր մայրաքաղաքին Մաժակի որուն բնակիչները իբր 30.000 կամ ըստ այլոց 300.000 անձ կը տանի իր նոր մայրաքաղաքը՝ Տիգրանակերտ (77 Քր.է առաջ) պատժելու համար այս երկիրը որ Հռոմի հնազանդելու յանցանքը գործած էր։

Մաժակի հետ դատարկացան նաեւ տաս և մէկ յոյն քաղաքներ եւս։ (Ապպիանոս, Միհրդատ 6. 7. Ստրաբոն ԺԱ. 14. 15. ԺԲ. 2–9. Պլուտարքոս. Լուկուլլոս 21. Թէոդոր Րէյնախ. Միհրդատ Եւպատոր. Չամ. Պատմ. Հայոց Ա. էջ 226 Գարագաշ. Քնն. Պատմ. էջ 135–138 եւայլն)։

Տիգրան 83էն (Քր.է առաջ) սկսեալ գրաւած էր արդէն զանազան երկիրներ և շինած՝ Տիգրանակերտ քաղաքը, ուր կը փոխադրէր իր քանդած և աւերած քաղաքներուն բնակիչները, Կապադովկիոյ և Կիլիկիոյ շրջանակէն։ Մոմսէն կը հաստատէ թէ Տիգրանակերտի այլազան բնակչութեան մէջ Կապադովկիացիներ ալ կային, ինչ որ կը հաստատէ թէ գրաւուած տասներկու յունական կոչուած քաղաքներուն մէկ մասը գէթ կը գտնուէին Կապադովկիոյ մէջ։

Կապադովկիա վերստին կ'ենթարկուէր Հայ-Պոնտական հզօր դաշնակցութեան տիրապետութեան, որ Հռոմի ներքին պառակտումներէն օգտուելով, իր ազդեցութիւնը տարածած էր Փոքր Ասիոյ վրայ։

Միհրդատ՝ մանաւորապէս Նիկոմէտ Գ. Բիւթանիոյ թագաւորին կտակով՝ իր երկիրը Հռոմին ձգելու որոշումին գործադրութեան հակառակեցաւ և կանխեց Հռոմայեցիները՝ ինքն գրաւելով Բիւթանիան (75)։ Եւ ինչպէս առաջին անգամ նոյնպէս նաեւ այս անգամ իր զէնքերուն շարժումը նշան մը եղաւ Փոքր Ասիոյ քաղաքներուն մէջ ապրող Հռոմէացի ընտանիքներու ջարդին։ Հռոմ՝ Միհրդատի դէմ ղրկեց այս անգամ Լուկուլլոսը որ խոհեմ քայլերով առաջանալով նախ Բիւթանիան և ապա Կապադովկիան գրաւեց (74–73 Քր.է առաջ), անցաւ Ալիս գետը՝ ապահովելով բանակին կռնակը հաւատարիմ Գաղատացիներով և շահեցաւ Կաբիրայի (=Սեբաստիա) ճակատամարտը (72 Քր.է առաջ) և վերջապէս Կիւզիկէի մէջ պաշարեց Միհրդատը և բոլորովին փճացուց անոր նաւատորմիղը Թենեդոս և Լիմնոս կղզիներուն առջեւ և այնքան կորուստ պատճառեց որ անիկա ստիպուեցաւ ապաստանիլ



իր փեսին՝ Տիգրանի արքունիքը (71 Քր.է առաջ) և զայն ալ Հռոմի դէմ կռուի հարկադրեց։

Հռոմէական բանակները երբ Կապադովկիա մտան Լուկուլլոս դարձեալ Հռոմի անձնուէր բարեկամ Արիոբարզանը վերահաստատեց իր գահուն վրայ։

Յետոյ գրաւեց Սինոպն ու Ամասիան (70ի աշնան), և գաղտնապէս համաձայնեցաւ Կապադովկիոյ Արիոբարզան թագաւորին հետ, անցնիլ Եփրատէն, հետեւեալ տարւոյ գարնան մէջ (69)։

Մինչ Տիգրան և Միհրդատ կը ծրագրէին իրենց ապագայ գործունէութիւնը, Հռոմի լեգէոնները մօտեցած էին Հայաստանի սահմաններուն։

Լուկուլլոս առաջին անգամ գրաւեց Եփրատ գետին ձախ կողմը կառուցուած Տոմիսա բերդը, որ իսկզբան Կապադովկեան լինելով, յետոյ Ծոփաց վաճառուած էր հարիւր տաղանդի փոխարէն (Ստրաբոն ԺԲ. գլ. Բ.)։ Լուկուլլոս զայն վերստին տուաւ Կապադովկիացւոց (Րէյնախ)։ Յետոյ բանակը Ծոփաց աշխարհէն անցաւ, առանց ոեւէ դիմադրութեան հանդիպելու, և մօտեցաւ անակնկալօրէն Տիգրանակերտի և վերջապէս գրաւեց 6 Հոկտ. 69ին (Քր.է առաջ) և կողոպտեց։

Տիգրանակերտի գրաւումը վճռական դեր կատարեց։ Տիգրան կորսնցուց բոլոր այն երկիրները որոնք գրաւած էր։

Լուկուլլոս աւելի վճռական հարուած մը տալու համար Տիգրան Մեծի որոշեց երկրին սիրտը՝ Արտաշատ առաջանալ (68), սակայն Հայաստանի ձմեռն օգնութեան հասաւ Հայ-Պոնտական բանակներուն։

Եղանակին դժուարութիւնները Հռոմէական բանակին մէջ ըմբոստութիւններ առաջ բերին և Լուկուլլոսի դէմ դժգոհութիւններ սկսան։

Լուկուլլոս ստիպուած ետ դարձաւ։ Տիգրան և Միհրդատ այն ատեն սկսան զինքը հետապնդել։ «Տեղ մը Տիգրան Հռոմայեցի զօրավար Լուկիոս Փաննիոսն ստիպեց ամրութեան մը մէջ քաշուիլ եւ փակուիլ: Ուրիշ տեղ Միհրդատ հայկական 4000 ու պոնտական 4000 հեծելազօրքով հրապարակ ելած էր, եւ իբրեւ ազատարար ու վրիժառու՝ երկրին բռնաւորին դէմ կոչ կ'ընէր ժողովուրդին: Բոլորն ալ կը միանային անոր զօրքին: Հռոմայեցի ցիր ու ցան եղած բոլոր զինուորները սպաննուեցան եւ մէջտեղէն վերցուեցան»: (Th. Mommsen. Römische Geschichte. Հտ. Գ. եր. 76 Կ. Յ. Բասմաջեան Իսկական Պատմութիւն Հայոց էջ 158)։

Լուկուլլոսի այս պարտութիւնը պատճառ եղաւ որ իր յաղթանակներուն բոլոր արդիւնքը փճանայ։ Այս պատերազմին մէջ Ատրպատականի թագաւորը՝ Միհրդատ որ Տիգրանի փեսան էր, հեծելազօրքով արշաւեց Կապադովկիա, և հուրի և սուրի մատնեց զայն և փճացուց Հռոմէական ցան ու ցիր գունդերը (Գարագաշեան Քնն. Պատմ. էջ 150)։

Լուկուլլոսի նահանջը, իր զինուորներուն ապստամբութիւնը, և իրեն դէմ եղած գանգատները դժգոհ ձգեցին նաեւ Հռոմը։ Եւ մինչդեռ Տիգրան՝ Հայաստանի արեւմտեան սահմաններէն անցնելով դարձեալ, վեցերորդ անգամ ըլլալով Կապադովկիա կը մտնէր և աւերումներ կը գործէր հոն և անկէ կը վանէր անգամ մը եւս Արիոբարզան թագաւորը՝ որ դարձեալ խոյս կուտար Հռոմայեցւոց երկիրները (67 Քր.է առաջ), և Միհրդատ՝ այս աննկուն պատերազմիկը՝ վերստին տէր կը դառնար Պոնտոսի և անվհատ գործունէութեամբ մը իր բանակը կը վերակազմէր (Պլուտարքոս Լուկուլլոս ԼԵ. 7. Ապպիանոս,

Միհրդաս 91)։ Ուստի՝ Հռոմի մէջ Ծերակոյտը պաշտօնանկ կ'ընէր Լուկուլլոսը և անոր տեղը կը ղրկէր Ակիլիոս Գլաբրիոնը (67)։ Տարի մը ետքը, Ասիոյ զօրաբանակին ընդհանուր հրամանատար կը կարգուի Պոմպէոս, որ առաջին յաղթանակը կը տանի Միհրդատի վրայ գիշերային կռիւի մը մէջ Ալիսի վրայ, լեռնային և հեղեղատներով կտրըւած այն վայրին կեդրոնը ուր յետոյ շինուեցաւ Նիկոպոլիս (յաղթանակի քաղաք)։ Միհրդատ այնքան չարաչար կը պարտուի որ կը պարտաւորուի փախչիլ Կիմմերեան Վոսփոր միայն երեք զինակիցներով։ Իր զինուորները անխնայ կը կոտորուին վրէժխնդիր Հռոմայեցիներէ (66 Քր.է առաջ)։

Միհրդատի յաղթելէ յետոյ Պոմպէոս իր զէնքերը կ'ուղղէ դէպի Հայաստան՝ Տիգրանի դէմ, և դիւրին յաղթանակի մը կը տիրանայ Մեծն Տիգրանի ապաշնորհ որդւոց՝ իրենց հօր դէմ յարուցած ապստամբութեան պատճառով։

Տիգրան կը կորսնցնէ «ի մէջ այլոց Կապադովկիոյ եւ Ասորիքի մասերը, Փիւնիկէն եւ Մեծ Ծոփքը» (Դիոն Կասսիոս) կամ ըստ Ապպիանոսի Տիգրան ետ կուտայ Ասորիքը Եփրատէն մինչեւ ծով, զոր Կիլիկիոյ մէկ մասին հետ ձեռք անցուցած էր։ Տիգրան այսպէս վերջնականապէս կը կորսնցնէ Կապադովկիան, որ գոնէ կարճ շրջան մը հայ իշխանութեան ենթարկուած էր (Հիւպշման Հին Հայոց տեղւոյ անուններ 1907 Վիեննա էջ 25. Մոմզէն Հռոմ. պատմ. 38. 180)։

Հռոմայեցիք Եփրատը՝ արեւմտեան բնական սահմանը կը նկատեն Հայաստանի և Տիգրիսը՝ հարաւային։

Այնպէս որ Մելիտինէ —մեծ մասամբ հայերով բնակեալ— որ Տիգրան Կապադովկիայէն զատելով Ծոփաց աշխարհին միացուցած էր, վերստին Հայաստանէն կը կորզուի և Կապադովկիոյ կը կցուի։ (Ե. Տիշոյեան, Հայաստանի Կոչնակ, 1933 էջ 1017)։

Պոմպէոս անգամ մըն ալ կը հաստատէ Արիոբարզանը իբր թագաւոր Կապադովկիոյ (66) և զայն Հռոմի հովանաւորութեան տակ կ'առնէ։

Տիգրան ընկճուած և Հայաստանն իսկ Հռոմի գերիշխանութեան տակ առնուած ըլլալով, և Պոնտոս բոլորովին նուաճուած՝ այլեւս Կապադովկիոյ դէմ նոր յարձակումներ չեն կատարուիր, և Պոնտոս ու Հայաստան կը ճանչնան Արիոբարզանի իշխանութիւնը (63 Քր.է առաջ)։

Այսպէս Արիոբարզան Ա. երեսուն տարիներու (96 - 63) շատ յարափոփոխ կեանք մը ունենալէ և քանի մը անգամ իր գահը կորսնցնելէ յետոյ, վերջապէս կը ճանչցուի համաձայնութեամբ իբր վեհապետ Կապադովկիոյ, թէ՛ Հռոմի, թէ՛ Պոնտոսի և թէ՛ Հայաստանի կողմէ։



ՊՈՄՊԷՈՍ
(Նաբոլիի թանգարանին կիսանդրին)

Արիոբարզան Ա. որ կը կոչուէր Եւսեբէս (=բարեպաշտ), երկրին մայրաքաղաքը իր անունով կը կոչէ Եւսեբիա, և շնորհիւ Հռոմի հզօր պաշտպանութեան, որուն այնքան հաւատարիմ գտնուած էր յետոյ իր



իշխանութեան տակ կ'ունենայ ըստ Ապպիանոսի նաև Հայաստանի Ծոփաց և Կորդուաց գաւառները (տես Թ. Րէյնախ, Միհրդաս Եւպատոր Գարագ. ՔՆ. Պատմ, էջ 153)։

Պոմպէոս՝ Միհրդատի մահէն և Սուրիոյ նուաճումէն յետոյ, Ասիոյ Հռոմէական ստացուածքները կը կազմակերպէ բոլորովին ի նորոյ։

Ասիական միակ նահանգին տեղ հիմա երեք նահանգներ կը կազմուին և 1. Բիւթանիա՝ Պոնտոսի մէկ մասին հետ, 2. Կիլիկիա՝ Պամփիւլիոյ և Իսաւրիոյ հետ և 3. Սուրիա՝ Փիւնիկէի հետ Հռոմէական հողերուն վրայ կ'աւելնան, մինչ Մեծ Հայաստան, Պոնտոսի հիւսիսային մասը (Վոսփոր), Պափլագոնիա, Գաղատիա, Կապադովկիա կը վերածուին Հռոմի հարկատու թագաւորութեանց։ Նոյնպէս Յուդա կը դառնար հովանաւորեալ թագաւորութիւն մը։ (տես Dr. Georges Weber, Histoire Universelle, t. III, Histoire Romaine. էջ 209 - 210)։

Այս նոր կարգաւորութեանց միջոցին՝ Մեծն Տիգրանի ապաշնորհ որդւոյն Տիգրան Փոքրի շնորհուած Ծոփքն և Կորտուքը, անոր կողմէ մերժուած ըլլալով, Պոմպէոս այդ նահանգները կը կցէ Կապադովկիոյ, ինչպէս նաեւ Կիլիկիոյ Դասթապալա նահանգը (Ստրաբոն, ԺԲ, էջ 534 և Հիւպշման Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 25–26)։

Պոմպէոս Ասիոյ այս կարգաւորման ընթացքին մեծ հոգածութիւն ցոյց կուտայ նաեւ քաղաքներու մասին։ Ոչ միայն կը հիմնէ բազմաթիւ նոր քաղաքներ, ինչպէս Պոմպէոպոլիս Կիլիկիոյ(1) և Պափլագոնիոյ մէջ, Նիկոպոլիս՝ Հայաստանի, Մեգալոպոլիս՝ Կապադովկիոյ մէջ, այլ նաեւ կը վերահաստատէ, կը մեծցնէ և շատ մը իրաւունքներով կ'օժտէ կարգ մը անշքացած վայրեր, ինչպէս Կաբիրա (Cabeira= Diospolis = Նէոկեսարիա), Եւպատորիա (Eupatoria = Magnopolis), Մազակա Կապադովկիոյ (= Կեսարիա) և ուրիշներ և կուտայ անոնց հողեր։ Պոմպէոս՝ Կիլիկիոյ և Ասորիքի (Coelesyrie) մէջ միայն, 20 քաղաքներ կը շինէ և բազմաթիւ կարեւոր քաղաքներու կուտայ ինքնավարութիւններ և կարեւոր առանձնաշնորհներ։

Այսպէս կը կառուցուի Ասիոյ Հռոմէական պետութիւնը, որ իր հովանաւորեալ թագաւորութիւններով և ճորտ պետութիւններով, իր իշխանական քուրմերով (ինչպէս Կապադովկիոյ և Պոնտոսի Կոմանաներուն Մեծ քուրմերը) և իր բոլորովին կամ կիսովին ազատ քաղաքներովը կը յիշեցնէր Գերման ազգին Հռոմէական Սուրբ Կայսրութիւնը։ (Dr. Georges Weber, նոյն, էջ 211–212)։

Նոր տուրքերը որ պիտի վճարէին Հռոմի հարկատու իշխանները, քուրմերը և քաղաքները, հանրային հասոյթներուն կէսէն աւելին կը կազմէին։ (Dr, Georges Weber, նոյն, էջ 212)։ Այնպէս որ Պոմպէոս՝

---

(1) Կիլիկիոյ Պոմպէոպոլիսը որ Պոմպէոսի անունով վերակոչուեցաւ Կիլիկիան ծովահէններու որջերէն մէկը դարձած հին Սոլի քաղաքն էր։ Այս քաղաքին բնակիչները Մեծն Տիգրան 77ին (Քր.է առաջ) Մազակայի (Կեսարիոյ) բնակիչներուն պէս իր մայրաքաղաքը Տիգրանակերտ փոխադրած էր։ (տես Կ. Ց. Բասմաջեան, Իսկական Պատմութիւն Հայոց, էջ 156)։

Այս քաղաքը այժմ կը կոչուի Մէձլան և կը գտնուի Կիւդնոս գետին բերանը։ (Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 72)։

Հռոմի կը մատուցանէր իր Ասիոյ մէջ ըրած տնօրինութիւններովը թանկագին ծառայութիւն մը, միեւնոյն ատեն ուժասպառ կ'ընէր Ասիան, որուն մէկ կարեւոր կայանն ալ էր Կապադովկիան, ուր վերջապէս կը թագաւորէր Հռոմի անձնուէրը՝ Արիոբարզան Ա. այնքան դժուարութիւններէ յետոյ և իր իշխանութեան մեծագոյն մասը անցնելէ յետոյ՝ առանց իրական իշխանութիւն ի գործ դնելու՝ աքսորի մէջ։

Բայց, հազիւ վերջնապէս հաստատուած Կապադովկիոյ գահուն վրայ գահընկէց կ'ըլլար ի նպաստ իր տղուն (Ապպիանոս, 105, Wal. Max.Ե. 7)՝ Արիոբարզան Բ.ի (63–52 Քր.է առաջ) որուն Պոմպէոս կը խոստանար Հռոմայեցւոց պաշտպանութիւնը։ (Asie Mineure, էջ 389)։

Արիոբարզան Բ. որ կը կրէր Հռոմայեցւոց բարեկամի (Philoromoeos) տիտղոսը մեծ տաղտուկ պատճառեց Կիկերոնի։

Իր օրով Կապադովկիա չափազանց տկարացած էր։ Իր պետութենէն քաշած հասոյթները չէին բաւեր վճարելու իր պարտքերուն տոկոսները։ Բանակ, բնաւ չունէր, իսկ ունէր թշնամի մը իրմէն անհամեմատ աւելի հարուստ և աւելի կարող, որ էր Կոմանայի քրմապետը Արքեղայոսը, որուն Պոմպէոս տուած էր մեծ-քրմապետութիւնը։ Անիկա ձգած էր իր պաշտօնը երթալու համար Սուրիոյ pro-consul Gabinius-ի մօտ, որ կը պատրաստուէր Պարթեւաց դէմ արշաւանքի մը։

Սակայն Եգիպտացիք այս շրջանին վանած ըլլալով Պտղոմէոս Աւլետ (Aulétès) իրենց թագաւորը (81–51 Քր.է առաջ) և գահ բարձրացուցած՝ իր աղջիկը Կղէոպատրան, Արքեղայոս՝ երիտասարդ թագուհիին ամուսին կրցաւ դառնալ։ Gabinius սակայն քիչ յետոյ Պտղոմէոսը Եգիպտոս դարձուց։ Արքեղայոս յաղթուեցաւ և սպանուեցաւ։ (Ստրաբոն, ԺԲ. 558)։

Իր տղան տակաւին պատանի անոր յաջորդեց իբր քրմապետ Կոմանայի և կազմեց Կապադովկիոյ մէջ կուսակցութիւն մը որ կ'սպառնար տապալել Արիոբարզանը երբ Կիկերոն եկաւ Ասիա։

Արիոբարզան Բ. իր գանգատները յայտնեց Ծերակոյտին։

Հռոմ յանձնարարեց իրեն դիմել pro-consul-ին, հաւաստելով որ «թէ՛ Ծերակոյտը եւ թէ՛ ժողովուրդը մեծագոյն շահը կ'ստանային Կապադովկիոյ թագաւորին պահպանութեամբ» (Ad. Div. ԺԵ. Չ).

Կիկերոն հազիւ Ասիա հասած իր տրամադրութեան տակ դրուեցաւ։ Թագաւորը եկաւ զայն գտնել ողբագին և ամբաստանեց քրմապետը թէ կ'ուզէր իր դէմ հանել իր հարազատ եղբայրը և զինուորական աջակցութիւն խնդրեց։

Կիկերոն անոր զօրք չվստահեցաւ բայց ուղղակի միջամտեց և ստիպեց քրմապետը հեռանալ թագաւորութեան սահմաններէն։ (Ad. Div. ԺԵ. 2. 4.)։

Արիոբարզան Բ.ի (63–51) յաջորդեց իր որդին Արիոբարզան Գ. (51–42) որ իր հօրը պէս խոնարհ պաշտպանեալը եղաւ Հռոմայեցւոց։ Ինքն ալ հալածուեցաւ զօրաւոր կուսակցութենէ մը, և նոյնիսկ վտարուեցաւ պահ մը, սակայն Կիլիկիոյ pro-consulը Կիկերոն, ասոր ի նպաստ ալ միջամտեց և զայն հաստատեց Կապադովկիոյ գահուն վրայ։

Կիկերոն թէեւ պաշտպանեց Կապադովկիոյ օրինաւոր թագաւորները և թոյլ չտուաւ որ անոնց իրաւունքը յափշտակուի. սակայն իր պաշտօնավարութեան շրջանին ի Կիլիկիա անուղղամիտ և անպարկեշտ ընթացքի մը մէջ գտնուեցաւ։



Պոմպէոս և Բրուտոս, որոնք Կապադովկիոյ թագաւորէն խոշոր գումարներ կը պահանջէին, զինքն ծառայեցուցին իրենց շահերուն։ Այնպէս որ անիկա ստիպուեցաւ հալածելու ի հաշիւ իր բարեկամներուն զայն որ պէտք էր պաշտպանէր յանուն Հանրապետութեան. (տես վերը էջ 41 – 42)։ Բրուտոս աւելի դաժան եղաւ և Կիկերոն, զայն գոհացնելու համար գործադրեց հարստահարութիւններ, միջամտութիւններ, սպառնալիքներ, կորզելու համար խեղճ թագաւորէն հարիւր տաղանդ (Ad. Ati. Զ 3)։



ՄԱՐԿՈՍ ՏՈՒԼԼԻՈՍ ԿԻԿԵՐՈՆ
(Ֆլորանս Ուֆիզի պալատի արձանը)

Ահաւասիկ թէ ինչ դեր կատարեց Կապադովկիոյ մէջ Հռոմէացի հիւպատոսներուն ամէնէն պարկեշտը՝ Կիկերոն, որուն բնակութիւնը այս նահանգին մէջ իրեն համար աւելի եղաւ և անհամբերութեամբ սպասեց այս տեսակ մը աքսորի վախճանին։

Կիկերոն առանց սպասելու իր յաջորդին ժամանումին ձգեց նահանգը և աճապարեց դառնալ Հռոմ (50),

Կիկերոնի մեկնելէն տարի մը յետոյ (49) ծագեցաւ քաղաքային պատերազմը և Փոքր Ասիա բոլոր Արեւելքի հետ Պոմպէոսի կուսակից հանդիսացաւ, և Փոքր Հայոց գունդերը՝ եկան խառնուեցան Պոմպէոսի զօրքերուն։

Կապադովկիա, Կիլիկիա, Փոքր Հայք Պամփիւլիա, և Պիսիդիա տուին իւրաքանչիւրը իրենց բաժինը։ Յաղթանակը մնաց Յուլիոս Կեսարի և անոնք որ Պոմպէոսի կուսակից եղած էին պատժուեցան։

Քաղաքային այս պատերազմներէն օգտուելով Փառնակ՝ Պոնտոսի Միհրդատ թագաւորի որդին, կը փորձէ վերականգնել իր հօրը պետութիւնը գրաւելով Սինոպը և բազմաթիւ ուրիշ քաղաքներ, որոնք Հռոմէացիք տուած էին Գաղատիոյ Դիոտարոս թագաւորին կամ կցած էին Հռոմէական նահանգին։

Դոմետիոս Կալվինոս, որուն ձգած էր Կեսար Ասիոյ հրամանատարութիւնը, Փառնակի դէմ գնաց բանակով մը որ կը բաղկանար Հռոմէական վարժ լեգէոնէ մը, հապճեպով այդ նահանգէն առնուած զինուորներով լեգէոնէ մը և Գաղատացի և Կապադովկիացի օգնական զօրքերէ։ Նիկոպոլսոյ մօտ Հռոմէական բանակը պարտուեցաւ և Փառնակ այս յաջողութենէն խրախուսուած արշաւեց Կապադովկիա և Բիւթանիա և այս երկիրներուն Հռոմի դաշնակից իշխողները հալածեց, Ամիսոսը առաւ և աւարի մատնեց, զէնք կրելու կարող բոլոր բնակիչները իբր գերի ծախեց և տղաքը ներքինացուց։ Բայց իր յաջողութիւնը տեւական չեղաւ վասնզի Ասանդր Կիմմերեան Վոսփորի կառավարիչը յեղափոխութեամբ մը տկարացուց զինքը և

Յուլիոս Կեսար անձամբ Ասիա գալով դիւրին յաղթանակ մը շահեցաւ և զայն հաղորդեց Հռոմ իր պատմական նամակով որ երեք բառէ կը բաղկանար Veni, Vidi, Vici (եկայ, տեսի և յաղթեցի)։

Յուլիոս Կեսար վերահաստատեց Փառնակէն գահազուրկ եղած Կապադովկիոյ և այլ թագաւորները և դրաւ ամէն բան գրեթէ պատերազմէն առջի վիճակին մէջ (Asie Mineure, էջ 297)։ Ասիկա Կոմանայի մեծ քրմապետութիւնը տուաւ Լիւկոմէտի — որ Կապադովկիոյ հին թագաւորներուն սերունդէն էր — ընդարձակելով նուիրական հողամասին տարածութիւնը 120 սթատի (կամ 4 schoenes(1) =շուրջ 22 քիլոմէթր) շրջագիծով մը։

Ամիսուս քաղաքը հռչակուեցաւ ազատ՝ բաւական ընդարձակ հողամասով մը։

Յուլիոս Կեսար († 44) նաեւ Կապադովկիոյ Արիոբարզան թագաւորին տուաւ Փոքր Հայքը առնելով զայն Գաղատացւոց Դիոտարոս թագաւորէն որ այդ պահուն Փոքր Ասիոյ ամէնէն զօրաւոր իշխանն էր 20 տարիէ ի վեր։ (Նոյն, էջ 397)։

Հռոմի հասարակապետութեան խռովութիւններու մէջ Արիոբարզան Գ. (51-42) վերջապէս ո՛չ միայն իր գահը այլ նաեւ իր կեանքը կորսնցուց, և սպանուեցաւ Կասիոսի հրամանաւ, վասնզի Կեսարի սպանիչներուն դէմ ելած էր, իբր հլու կամակատար Հռոմի։

Հռոմի մէջ կատարուած յեղաշրջումէն յետոյ, Օկտաւիանոս և Անտոնինոս, Լեպիտոսի միջնորդութեամբ համաձայնած էին, և կազմած էին Եռապետութիւն մը։

Անոնք մահավճիռներ արձակած էին Կիկերոնի և ազատական կուսակցութեան միւս պետերուն, ինչպէս Բրուտոսի և նոյնիսկ Կասիոսի դէմ իբր հայրենադաւերու։

Կասիոս որ պարտաւորուած էր Ասիոյ մէջ դիրք բռնել ինչպէս փութաց Կիլիկիա, պատժելու Տարսոնի բնակիչները, նոյնպէս նաև բանակ ղրկեց Կապադովկիա պատժելու համար Արիոբարզան Բ.ը, որ ինչպէս ըսինք մահուամբ պատժուեցաւ (42 Քր.է առաջ) և երկիրը կեղեքուեցաւ։ (Ապպիանոս Դ. 63)։

Իրեն յաջորդեց իր եղբայրը Արիարաթ Թ. (42–36 Քր.է առաջ) որուն դէմ իբր մրցակից կը մաքառէր Սիսինա անուն մէկը որ գրաւած էր Կապադովկիոյ մէջ շատ մը բերդաքաղաքներ (Ստրաբոն ԺԲ. էջ 557)։



ՄԱՐԿՈՍ ԱՆՏՈՆԻՆՈՍ
(83 – 30 Քրիստոսէ առաջ)
Ֆիորէնձայի թանգարանի արձանը)

(1) Աղեքսանդրեան Անդրէաս վարդ. (Պատմ. Սեբաստիոյ, էջ 38) «վտաւան» կը թարգմանէ այս բառը։



Եռապետներէն Մարկոս Անտոնինոս (83 – 30) որուն բաժին ինկած էր Հռոմի Հասարակապետութեան Ասիական երկիրները, ըստ Հռոմէական աւանդութեան պառակտելու համար երկիրը, Սիսինայի(1) կողմը բռնեց, հաճոյանալու համար անոր մօրը Կլաֆիրայի որ իրեն դարպասած էր (Asie Mineure էջ 402)։

Անտոնիոս որ Ասիոյ մէջ պերճաշուք իշխանութիւն մը հաստատեց և զայն վերակազմեց բոլորովին ի նորոյ, զանազան շնորհումներ ընելով գահերու, ի մէջ այլոց Կապադովկիոյ արքայական վաղեմի ընտանիքին իշխանութեան վերջ տուաւ գլխատել տալով Կապադովկիոյ Արիարաթ Թ. թագաւորը, Հայոց Արտաւազդ Բ. թագաւորին դէմ իր արշաւած ատեն անոր կատարած դաւաճանութեան ի պատիժ (Հմմտ. Հ. Սահակ Տէր Մովսէսեան, Պատմ. Հայոց, 1922, էջ 296) և անոր գահը տուաւ Արքեղայոսի՝ Կոմանայի երբեմնի Մեծ Քրմապետին (Ստրաբոն ԺԲ. 540) որ Կիկերոն պատժած էր (36)։



ՕԿՏԱՒԻԱՆՈՍ ՕԳՈՍՏՈՍ
(1910ին Լաբիկանա ուղիին վրայ ամփիթատրոնէն ոչ շատ հեռու գտնուած արձանը)

Օկտաւիանոս (ծն. 63 Քր.է առաջ — † 14 Քր.է յետոյ) Ասիա գալէն յետոյ, Կոմանայի քրմապետ Լիւկոմէտը պաշտօնանկ ըրաւ և անոր աւարը տուաւ Կղէոն Գորտիացիի(2)։ Օկտաւիանոս աւելի ընդարձակեց ստացուածքները Արքեղայոս թագաւորին, որ միշտ հարկատու կը մնար Հռոմի կայսեր։

Արքեղայոս նոյնիսկ ամուսնանալով Փոքր Հայոց և Պոլեմոնիոյ (=Արեւելեան Պոնտոս) Պիւթոտորիս(3) թագուհիին հետ, որ իր որդւոյն հետ կ'իշխէր այդ երկիրներուն, այր

(1) Dion Cassius ԽԹ. էջ 277 կը շփոթէ այս Sisinaն Արքեղայոսի հետ, որ թագաւորեց անմիջապէս յետոյ Կապադովկիոյ։ Բայց Ստրաբոն որուն հեղինակութիւնը անվիճելի է այն խնդիրներուն համար որոնք կը պատկանին Փոքր Ասիոյ, կը հաստատէ թէ անոնք երկու բոլորովին տարբեր անձեր են (տես Asie Mineure էջ 402)։

(2) Ասոր մահէն յետոյ Օկտաւիանոս անոր իշխանութիւնը տուաւ Դիւդեւտոսի, որ Ատեատորիսք Գաղատացիին սերունդէն էր, (Աղեքսանդրեան Անդրէաս վրդ. Պատմ. Սեբաստիոյ էջ 39)։

(3) Սա աղջիկն էր Նիւսայի Հռետոր Պիւթոտորի որ շատ հարուստ և մեծատուն էր և որովհետեւ շատ ժամանակ Տրալլա բնակած էր, կը կոչուէր Տրալացի (Ստրաբոն)։ Այրին էր Պոլեմոն թագաւորին, որ ոմանք սխալմամբ Հայոց թագաւոր կը կարծեն։

և կին իւենց իշխանութեան տակ ունեցան Եւքսինեան Պոնտոսէն մինչեւ Միջերկրական տարածուած գաւառները, որոնք տակաւին չէին ենթարկուած Հռոմէական տիրապետութեան, վասնզի Արքեղայոս իր իշխանութեան տակ ունէր Փոքր Հայոց հարաւային մասը (Մալաթիոյ գաւառը), Կապադովկիան, Լիկայոնիան, Իսաւրիան և Կիլիկիա՝ Տրաքեան Ելեւսի կղզեակին հետ,— Կալիկատնոսի քով եղած Սելեւկիոյ մօտը— որուն վրայ Արքեղայոս կանգնեց փառաւոր պալատ և գեղեցիկ շէնքեր։ Իսկ Պիւթոդորիսի կը պատկանէր՝ Տրապիզոն՝ Փառնակիա գաւառով, Տիբարինայ երկիրը, Դէմիսկիւրայի դաշտավայրերը, Փանարիոյ հովիտները որոնք կ'ոռոգուին Մեծ Հայքէն եկող Լիկոս և Իրիս գետերով, Զէլլիան, Մեգալուպոլսոյ երկիրը և վերջապէս Կաբիրան և իր գաւառը։ Այսպէս Կապադովկիա կ'ստանար տարապայման ընդարձակութիւն մը և զօրութիւն մը։ Երկու վեհապետ ամուսինները կը վայելեն իրենց թագաւորութիւնը բաւական երկար ատեն խաղաղ կեանքով, միայն օգնելով զօրքով ու պաշարով Հռոմէական բանակներուն որոնք Հայաստան կ'արշաւէին։

Պիւթոդորիս թագուհին զարդարեց Կաբիրա քաղաքն և ի պատիւ Օկտաւիանոս Օգոստոսի՝ անուանեց Օգոստոս կամ Սեւաստա (հիմա Սեբաստիա=Սըվազ)։

Օգոստոս կայսրը մեռաւ Քր.է յետոյ 14 թուականին, և իրեն յաջորդեց Տիբերիոս՝ իր որդեգիրը (14–37)։ Նախատինքներուն մոռացումը նոր կայսեր առաքինութիւններէն մէկը չէր։ Ան չուշացաւ յայտնելու իր զգացումները հանդէպ անոնց որոնք իր կայսրութեան հասնելէն առաջ զինքը դժգոհ թողած էին։ Ասոնցմէ մէկն էր Արքեղայոս, Կապադովկիոյ թագաւորը որ անխոհեմութիւնը ունեցած էր զայն արհամարհելու անոր Հռոդոս բնակութեան միջոցին(1) և մոռցած էր իր սէրը յայտնելու Օգոստոսի թոռը Կայիոս Կեսարին(2)։ Լիվիա(3) զայն կոչեց Հռոմ կեղծաւոր նամակով մը որուն մէջ առանց անոր զգացնելու իր տղուն դժգոհութիւնը, կը յանձնարարէր գալ խնդրել կայսերական ներողամտութիւնը։

Արքեղայոս փութաց Հռոմ ուր խստութեամբ ընդունուեցաւ և անմիջապէս դատաստանի ենթարկուեցաւ Ծերակոյտին առջև (Տակիտոս Ա. Բ. 42) իբր ապստամբութեան մը ծրագրող։ 80 ամեայ խեղճ թագաւորը, հաշմանդամ և տկարամիտ ստիպուեցաւ պատգարակով երթալ մինչև Ծերակոյտ։ Պիտի չկարենար խուսափիլ դատապարտութենէ մը առանց ձախող եռանդին վկայի մը որ հաւաստեց թէ լսած էր անոր

(1) Տիբերիոս՝ Հայաստան Բ. անգամ ղրկուած ատեն (6 Քր.է առաջ) զայրանալով կայսեր դէմ Հռոդոս քաշուած է և իր երկու տեղակալները Հայաստան մտած են թագաւորեցնելու համար Արտաւազդ Գ.ը (5 Քր.է առաջ) (Հ. Ս. Տ. Մովս. Պատմ. Հայոց, էջ 303–304)։

(2) Կայիոս Կեսար 4ին (Քր.է առաջ) Հայաստանի մէջ Արտագերս ամրոցին առջեւ վիրաւորուած հայերէն և մեռած Լիւկիոյ մէջ (Բասմաջեան, Իսկ. Հայոց. Պատմ. էջ 175)։

(3) Օգոստոսի Բ. կինը որուն Ա. ամուսնութենէն ունեցած զաւակն էր Տիբերիոս։



ըսելը. «Անգամ մը դառնամ Կապադովկիա, պիտի ցոյց տամ Տիբերիոսին թէ ես ջիղեր ունիմ»։

Ամբողջ ժողովը այս բառերուն վրայ խնդալ սկսաւ։ Ծերունին դուրս ելաւ իր պատգարակէն, թոթովեց արդարացման քանի մը բառեր և դատավարութիւնը վերջ գտաւ։ Քանի մը օր յետոյ Արքեղայոս մեռաւ, գուցէ աւելի վախէն քան թէ ծերութենէն (17 Քր.է առաջ)։

Տիբերիոս վերջ տուաւ Կապադովկիոյ անուանական անկախութեան և զայն վերածեց Հռոմէական նահանգի մը, մինչ իր կինը՝ Պիւթոդորիս պահեց իր սեփական երկիրները մինչև իր մահը (38), երբ արդէն Միջերկրականեան Արեւելքը ամբողջ ենթարկուած էր Հռոմէական կայսրութեան լուծին և Հայաստան եւս մտած էր Հռոմէական հովանաւորութեան տակ։

Այս միացումը կատարուեցաւ Գերմանիկոսի ձեռամբ որ Կապադովկիան Հռոմէական նահանգի վերածելէ և Հայաստանի գահուն վրայ Հռոմի կուսակից՝ Արտաշէսը (Զենոն) դնելէ յետոյ մեռաւ Անտիոքի մէջ, 34 տարեկան, հիւծախտէ կամ ինչպէս կը կարծուի թունաւորմամբ (Գարագաշեան, ՔՆՆ. Պատմ. Հայոց, Բ. հտ. էջ 198)։



ՏԻԲԵՐԻՈՍ ԿԱՅՍՐ
( 14 - 37 )
(Նաբոլիի Ազգային թանգարանի կիսարձանը)

Ասիկա արհամարհելի իւրացում մը չէր Հռոմի համար, վասնզի պակսեցնելով բոլոր տուրքերը որ երկիրը կը վճարէր թագաւորին, Տիբերիոս ստացաւ հասոյթ մը որ անոր թոյլ տուաւ պակսեցնելու անմիջապէս կէսը հարիւրերորդ տինարի տուրքին որ Օգոստոս հաստատած էր վաճառումներուն վրայ։

Նախ քան Կապադովկիոյ Հռոմէական Ասիոյ կցուիլը, Պոնտոս և Ասորիք Հռոմէական նահանգի վերածուած էին, ինչ որ անխուսափելի կը դարձնէր միեւնոյն ճակատագրին ենթարկումը Կապադովկիոյ որ անշուշտ շատոնց վճռուած՝ գործադրուեցաւ Քրիստոսի 17 թուականին։

Մեծն Միհրդատ և Տիգրան և իրենց Պոնտական–Հայկական պատերազմները Հռոմայեցւոց դէմ՝ որոնք միայն ասուպի մը վաղանցուկ

փայլը ունեցան, պատճառ եղան որ մինչեւ Տիգրիս տարածուած երփայլը ունեցան, պատճառ եղան որ մինչեւ Տիգրիս տարածուած երկիրները Հռոմայեցւոց տիրապետութեան ենթարկուին, շնորհիւ Հռոմէական ննգութեան և պառակտումներուն, որ գիտցան ցանել փոքր մէկական ննգութեան և պառակտումներուն, որ գիտցան յանել փոքր Ասիական պզտիկ պետութեանց մէջ, որոնք Մեծն Անտիոքոսի, Միհրդատի և Տիգրանի պէս մեծ առաջնորդներու գործը գնահատելէ և նոյնիսկ հասկնալէ հեռի էին։

Եւ ասոր համար էր որ պատահեցաւ ինչ որ անխուսափելին էր։ Իրարու դէմ մաքառելով տկարացած՝ առանձին առանձին ընկճուեցան և մտան Հռոմէական լուծին ներքեւ։



Դ.

# ՀԱՅԵՐԸ ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՄԷՋ

## ՄԵԾՆ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՕՐԵՐԷՆ

## ՄԻՆՉԵՒ

## ՀՌՈՄԷԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

(Քր.է առաջ 322 — 17 Քր.է յետոյ)

Ինչպէս տեսնուեցաւ մինչեւ Ալեքսանդրի աշխարհակալութիւնները Կապադովկիա և Հայաստան՝ Ասիոյ աշխարհամասին մէջ, կոյս մնայնութեամբ և անհաղորդ Հելլէն մոքին ճախրանքներուն և սաւառնումներուն՝ ապրելէ յետոյ, ենթարկուեցան յոյն մշակոյթին ազդեցութեան, բոլոր Արեւելքին հետ։ Սակայն երկու երկիրներուն վրայ Հելլենականութիւնը հաւասար ներգործութիւն մը չունեցաւ։

Կապադովկիա շուտով ենթարկուեցաւ այդ ազդեցութեան մինչ Հայաստան աւելի հեռուն և անմատոյց իր լեռնային դիրքին պատճառով, յամրաբար և ուշ։

Հայք և Գամիրք, ունենալով ցեղային նման բաղկացութիւն, և հետեւաբար բարքերու, սովորութեանց և մշակոյթի նմանութիւն, և մինչեւ Ալեքսանդրի աշխարհակալութիւնը ենթարկուած ըլլալով նոյն և նման քաղաքակրթութեանց —գլխաւորաբար Մար-Պարսիկ— ազդեցութեան, իրր ազգ և իրր ժողովուրդ ունէին միեւնոյն նկարագիրը և ձգտումը և իրենց զարգացման ուղին գրեթէ միեւնոյնն էր։ Այնպէս որ շատ պարզ է թէ որքան ալ իրենց աշխարհագրական սահմաններուն մէջ անոնք ստանային մասնաւոր առանձնայատկութիւններ և տեղական յատկանիշներ, շատ ինչ պիտի ունենային նման և նոյն, եթէ Մակեդոնացի աշխարհակալին Ասիոյ պատճառած մեծ յեղաշրջումը





չխանգարէր անոնց կեանքին ընթացքը և չբաժնէր Եփրատի երկու եզերքները հաստատուած այս երկու ազգերուն վերելքին ուղղութիւնը, Կապադովկիացին հեռացնելով Արեւելքէն և նետելով Յոյն-Հռոմէական քաղաքակրթութեան գիրկը ձուլումի մը ենթարկելու համար, և Հայը՝ կապուած պահելով տակաւին Արեւելքին։

Այսպէս կը բացուէր խրամ մը՝ մտայնութեան և մշակոյթի տեսակէտով երկու ազգերուն միջեւ։

Այս պատճառով հետաքրքրական ժամանակամիջոց մը կը ներկայացնէ այն երեք հարիւր տարիներուն շրջանը, ուր Կապադովկիացին հազիւ թէ ազգային նկարագիր և առանձնայատկութիւն ստացած, հզօր քաղաքակրթութեան մը անմիջական ազդեցութեան տակ արագ քայլերով դէպի ձուլում և ընկլուզում կը դիմէ, մինչ իրենց անմատոյց լեռներուն և ձորերուն մէջ առանձնացած Հայերը ո՛չ միայն պետական անկախութեան շէնքը կառուցանել կ'աշխատին այլ նաեւ Հայ ազգը կը կերտեն, բազմաթիւ նուաճուած այլալեզու և այլացեղ ժողովուրդներ ձուլելով իրենց մէջ, ամէնքն ալ հայացնելով, գէթ Հայ լեզուն միակ տիրող լեզուն դարձնելով այն ընդարձակ տարածութեան վրայ որ Եփրատէն մինչեւ Կուր կը տարածուէր։

Ասոնք ամէնն ալ հետեւանքն էին այն մեծ յեղաշրջութեան որ Ալէքսանդրի աշխարհակալութիւնը կը պատճառէր Արեւելքի, և որ անշուշտ չէր կրնար իր ազդեցութիւնը չունենալ այս երկու ասիական երկիրներուն վրայ, որոնցմէ միայն Կապադովկիա ուղղակի կը տիրապետուէր և կը կառավարուէր Մակեդոնացիներէ (տես վերը, էջ 160 – 165)։



ՄԵԾՆ ԱԼԵՔՍԱՆԴՐ
(Լուվրի թանգարանին կիսանդրին)

Ըստ Կուինտիոս Կուրտիոսի և Ապպիանոսի, Մակեդոնացի աշխարհակալին ուղղակի իր իշխանութեան ենթարկած Հայաստանը, միայն Փոքր Հայքն էր, որուն վրայ կուսակալ դրաւ Սարտիկեցի Միհրէն կամ Միհրան (Mithrinès) սատրապը(1), վասնզի Ալեքսանդրի Մինոն սպարապետը չկրցաւ մտնել Փոքր Հայք և ժողովուրդէն ետ մղուեցաւ (տես Վալերի Բրուսով, «Տարեգրութիւն Հայ ժողովրդեան պատմական ճակատագրին. Զ. դարէն Ն. Ք. Քրիստոսէ մինչեւ մեր օրերը», խորագրով յօդուածաշարքը որ թարգմանութիւնն էր ներածական տեսութեան իր «Հայ բանաստեղծութիւնը ամենահին ժամանակներէ մինչեւ մեր օրերը, ռուս բանաստեղծներու թարգմանութեամբ» գործին, Մոսկուա 1916, ԲԶՄՊ. 1930, էջ 371)։

Սակայն եթէ ընդունինք իսկ թէ Մեծ Հայք եւս նուաճուած է (Դուրեան Ազգ. Պատմ. էջ 46), հարկ է խոստովանիլ թէ Հայաստանի

---

(1) Միհրան Լիւդիոյ սատրապը իրեն անձնատուր ըլլալուն ի վարձ ստացած էր Հայաստանի փոխարքայութիւնը որ վարեց 330էն 323 Քր.է առաջ։

վրայ Մակեդոնական տիրապետութիւնը միայն ստուեր մը եղած է, վասնզի Աղեքսանդրի մահէն յետոյ երբ իր երկիրը բաժնուեցաւ իր զօրավարներուն միջեւ և Եւմենէս տէր դարձաւ Կապադովկիոյ և լիո-վին չնուաճուած այս երկիրը կրցաւ իրեն հնազանդեցնել, Հայաս-տանը ստացող Նէոպտողեմոս միայն ընդդիմութեան հանդիպեցաւ հոն և Եւմենէս անձամբ Հայաստան երթալով, համոզեց Արդուարդ Հայ իշ-խանը կամ թագաւորը — որ ապստամբութեան գլուխը անցած էր — ընդունիլ զայն։

Նէոպտողեմոս հազիւ երկու տարի (323–321) պաշտօնավարեց։

Այն կռիւներու միջոցին, որ Աղեքսանդրի զօրավարները իրարու դէմ մղեցին գրեթէ երկու տասնեակ տարիներ (տես էջ 160-165) պա-տեհութենէն օգտուելով առաջին երկիրը եղաւ Հայաստան, որ իր անկա-խութեան տիրացաւ Արդուարդ թագաւորին գլխաւորութեամբ (Դիոդոր Սիկիլիացի), որ հաւանօրէն միակ իշխողը չէր Հայկական բարձրաւան-դակին վրայ, ուր իր ժամանակը և իրմէ յետոյ երեւան կուգան ուրիշ իշխանութիւններ, որոնք կա՛մ բնաւ չէին ճանչնար Աղեքսանդրի յա-ջորդներուն իշխանութիւնը կա՛մ միայն անուանապէս կը հնազանդէին անոնցմէ մէկուն։

Իպսոսի ճակատամարտէն (301) յետոյ Հայաստան և Կապադովկիա ձգուեցաւ Սելեւկեանց (տես էջ 165–166) որոնք նախամեծար համարեցին այս երկիրներուն տէր դարձած բնիկ իշխաններուն հպատակութեամբ բաւականանալ և այդ երկիրները թողուլ իրենց «թագաւոր»ներուն ժառանգական իշխանութեան տակ, զանոնք նկատելով իբր սատրապ-ներ կամ կուսակալներ, իրենցմէ կարգուած, վասնզի զանոնք նուա-ճելը դժուար էր և Հռոմի կողմէ սպառնացող վտանգը՝ մերձաւոր։ Հե-տեւաբար Սելեւկեանք անհանգիստ չըրին տեղական իշխանները կամ թագաւորները, միայն աշխատելով որ անոնք միանալով ազգային մեծ միութիւններ չկազմեն։

Այս քաղաքականութեան արդիւնքն էին Կապադովկիոյ երկու թագաւորութիւնները, Պոնտոս և Կապադովկիա, և Հայաստանի մէկէ աւելի իշխանութիւնները, որոնք իրենց բնիկ իշխանները պահեցին։

Պատմութիւնը մեզի կ'աւանդէ Արդուարդի յաջորդներուն անուն-ները(1), 280էն մինչեւ 195, մինչեւ որ երեւան կուգայ Արտաշէս (Ար-տաքսիաս)։ Իսկ արեւելեան Հայաստանի մէջ Ատրպատ Մարաստանի սատրապին իշխանութեան տակ դարձաւ Արդուարդի օրերուն կազ-մուած իշխանութիւնը, — որուն տիրապետութեան տակ էին Ուրմիոյ

(1) Ըստ Պողիբիոս պատմիչին (Բ. դար Ք.Ե առաջ) Արդուարդի յաջորդած է Հրանտ կամ Որոնդէս, որ իբր 45 տարիներ իշխած է (290–245)։ [Այս թագաւորը կը յիշէ 260ին նաեւ Մեմնոն յոյն պատմիչը՝ Բ. դարուն վերջերը Ք.Ե յետոյ ծնած Հերակլիա Պոնտացւոյ]։ Անկէ վերջը Արտաւազդ, որ իր պետութիւնը տարածած էր մինչեւ Ատրպա-տականի սահմանները և նշկահելով Սելեւկեանց դէմ հարկ տալը ընդ-հատած է, սակայն յետոյ ահաբեկելով Մեծն Անտիոքոսէն (222–187) ընծաներով ողոքած է զայն և խոստացած՝ հարկ վճարել և երկար ժամանակ (245–195) խաղաղութեամբ կառավարած է իր աշխարհը ըստ Պողիբիոսի։ (Դուրեան, Ազգ. Պատմ. 1934, էջ 48-49)։



լիճէն մինչեւ Արաքս տարածուած երկիրները — նոյնպէս կը թուի թէ իր անկախութիւնը պահած էր(1) մինչեւ Անտիոքոս, նման Ծոփաց նահանգին մէջ կազմուած իշխանութեան կամ թագաւորութեան(2)։

Մեծն Անտիոքոս (227–187) կ'երեւայ թէ առաջին անգամ կը խորհի Հայաստանը իրապէս նուաճել և արդարեւ հոն կը մտնէ և Եփրատէն արեւմուտք Փոքր Հայք կոչուած մասը զատելով կուտայ ոչ-հայազգի սատրապի մը, իսկ Մեծ Հայքի կառավարութիւնը կը յանձնէ՝ Հայերը սիրաշահելու համար ապահովաբար, դարձեալ բնիկ արքայական Հիւ-դառնեան տունէն Որոնտ անուն մէկու մը (տես Ն. Տիչոյեան, Հայոց մուտքը քաղաքակիրթ ազգերու շարքին մէջ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ, 1933, թ. 43, էջ 1016)։

Անտիոքոս յետոյ 193ին Մեծ Հայքն ալ երկուքի կը բաժնէ— ան-շուշտ տկարացնելու համար Հայոց ոյժը— և Ծոփաց կամ Արեւմտեան Հայաստանի իշխանութիւնը կը յանձնէ Զարեհի (= Դարեհ= Զարիադ-րէս= Զարիադրիս) (193–158), իսկ Արեւելեան Հայաստանը՝ Արտաշէ-սի (=Արտաքսիաս), որոնք իր բանակին մէջ զօրապետներ եղած էին, ըստ Ստրաբոնի որ կ'ըսէ թէ «Արտաքսիաս եւ Զարիադրիս, զօրավարք Անտիոքայ Մեծի, բաժանեցան ի մէջ իւրեանց զԱրմենիա եւ վարեցին զերկիրն ի սկզբան յանուն եւ հրամանաւ Անտիոքայ, ապա տեսեալ զտէր իւրեանց յաղթեալ ի Հռոմայեցւոց՝ փութացան անցանել ի կողմն Հռոմայեցւոց եւ լեալ ինքնագլուխ առին զանուն թագաւորին»: Այս տողերէն ոմանք կը հետեւցը-նեն թէ Արտաշէս և Զարեհ բնիկներ չէին, սակայն մանաւորապէս Արտաշէսի գործերը և ծրագրած ազգային միութիւնը, ցոյց տուած ազգայնական ձգտումները և Հայ ցեղին բնակած հողերը մէկ մականի տակ միացնելու համար թափած ջանքերը, պատճառներ են որ մենք չկրնանք համոզուիլ որ անիկա ըլլայ օտար մը, այնքան մտատանջ-ուած հայ ազգին և պետութեան ապագայով։ Անշուշտ ասոր համար Դուրեան պատրիարք կ'ըսէ թէ Արտաշէս «անտարակոյս Հայոց թագա-ւորներու սերունդէն էր» (Հայոց Պատմ. էջ 50), ինչ որ շատ հաւանա-կան է։

Մագնեսիոյ ճակատամարտէն (190 Ք.Ե առաջ) յետոյ ուրեմն Հա-յաստան անկախ կը դառնար, մինչ Կապադովկիա կ'ենթարկուէր աւելի հզօր՝ Հռոմէական ազդեցութեան։

Մագնեսիոյ ճակատամարտէն յետոյ, երբ Անտիոքոս հարկադրը-

(1) Կը յիշուին իր յաջորդներէն Արտաբազանէս կամ Արտաւազ (239–220?) որ Անտիոքոսի հնազանդութիւն յայտնած է, և Որոնդէս (220?–215?) որուն օրով Հայաստան իբր թէ բոլորովին նուաճուած է։ (Բասմաջեան, Իսկ. Պատմ. Հայոց, էջ 143)։

(2) Առաջինը այդ թագաւորներուն եղած է Արշամ (230–210) որուն թագաւոր տիտղոսով դրամը կայ։ Իրեն յաջորդած է Փռասափեռն կամ ուղղակի Շաւարշ կամ Քսերքսէս (210–200) որ նախապէս ապստամբած է Մեծն Անտիոքոսի դէմ և ապա հաշտուած և իրեն փեսայացած է ամուս-նանալով անոր Անտիոքիա քրոջը հետ, իբրեւ օժիտ ստանալով Արեւել-եան Հայաստանը, զոր Սելեւկեան ինքնակալը կորզած էր Ատրպատա-կանի թագաւորին ձեռքէն։ Անգամ մըն ալ երբ ըմբոստացաւ սպան-նուեցաւ իր կնոջ ձեռքով։

ւեցաւ հրաժարիլ Տաւրոսէն անդին գտնուող երկիրներէն և Հռոմի աջակցող պատամբ երկիրները իրենց անկախութիւնը ձեռք բերին, Հայարնակ երկիրներու մէջ երեք անկախ թագաւորութիւններ երեւան եկան։

1. ՄԵԾ ՀԱՅՔ՝ Երասխի հովտին մէջ Արտաշատ մայրաքաղաքով,

2. ԾՈՓՔ՝ Հայաստանի հարաւ-արեւմտեան կողմը, որուն մայրաքաղաքն էր Արշամուշատ(1),

3. ՓՈՔՐ ՀԱՅՔ՝ Եփրատի արեւմտեան եզերքը։

Ասոնցմէ առաջինը, այն որ Արտաշէսի իշխանութեան տակն էր ամէնէն մեծն էր։ Ստրաբոն զայն կը կոչէ Բուն Արմենիա, «այսինքն զամենայն մասն երկրին, որ ձգի զաշխարհովն Մարաց, Աղուանից եւ Վրաց մինչեւ Կողքիս եւ Ի ԾՈՎԵԶԵՐԵԱՑՆ ԿԱՊԱԴՈՎԿԻԱ» (Ստրաբոն, ԺԱ. 15):

Իսկ Զարեհի և իր յաջորդներուն իշխանութեան տակ գտնուած Ծոփաց աշխարհը կը դնէ Ստրաբոն «հարաւակողմն Արմենիոյ, մանաւանդ զմասն յարեւմտից» (Ստրաբոն, ԺԱ. 15):

Ան իր մէջ կը պարունակէր Մելիտինէն իր շրջականերով և Խարբերդի այժմեան գաւառին մեծ մասը և Եփրատէն դէպի Արեւմուտք հողեր չէր պարունակեր, այնպէս որ վերջէն Հայաստան անունով ճանչցուած երկրին սահմաններէն դուրս տեղ մը չէր։ Իսկ անկէ դուրս էր ըստ Ստրաբոնին, «Աշխարհ Փոքուն Հայոց . . . երկիր լաւ բաւականին պտղաբեր» և տարբեր Ծոփաց աշխարհէն, (Ստրաբոն, ԺԲ. 3. 18) և կը գտնուէր Եփրատի արեւմտեան կողմը, այն աշխարհամասին մէջ որ երբեմն Կապադովկիոյ մասը կը կազմէր, և որ իր մէջ պարունակելուն համար բազմաթիւ Հայեր պէտք է ստացած ըլլայ Փոքր Հայք(2) (Armenia Minor) կոչումը։

Հետեւաբար Փոքր Հայք անունով ճանչցուիլ կ'սկսէին 190 թուականէն (Քր.է առաջ) սկսեալ Գայլ կամ Լիւկոս (Lycos) և Հալիս կամ Ալիս (Halys) գետերուն վերին հովիտները, եփրատեան իրենց դրացիներով։ (J. Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam depuis la Conquète Arabe jusqu'au 886, Paris, 1919, էջ 301)։

Այսպէս Հերոդոտոս (Ա. 72) գիտէ թէ Ալիս գետը կը բխի հայկական լեռներէն, ինչպէս կը ծնի Եփրատի հիւսիս-արեւմտեան բազուկը Սեբաստիոյ և Երզնկայի կէս ճամբուն վրայ և թէ բուն Հայաստանը կ'սկսի Եփրատի Արեւելեան եզերքէն։ (Հերոդոտոս Ե. 52)։

Ուրեմն Հերոդոտոսի համար Ալիսի վերի հովիտները կը պատկանէին Հայաստանի մը որ ծանօթ Մեծ Հայքի շրջանակէն դուրս էր։ (J. Laurent, նոյն)։

J. Laurent կ'ըսէ թէ Փոքր Հայք առաջին նուաճուած երկիրն է Հայ ցեղէն և առաջին Հայախօս նահանգը, որ պարսկական միապետութեան անկումէն յետոյ վերստացաւ իր ազգային անկախութիւնը։ (J. Laurent, նոյն)։

Ստրաբոն և Պլինոս կը խօսին Փոքր Հայաստանի մը վրայ Փոքր Ասիոյ մասին մէջ, որ Եփրատի հիւսիս–արեւմուտքը կը գտնուի և հարաւէն իրեն սահման ունի Գայլ գետին (Լիւկոսի) հովիտը։

Ուրեմն որոշ է թէ Եփրատի հիւսիս-արեւմուտքը գտնուող երկիրը, ինչպէս նաև Գայլ և Ալիս գետերու վերին հովիտներու շրջանակին մէջ գտնուող երկիրները բնակուած էին Հայերէ և հին ատեններէն սկսեալ կազմուած էր Փոքր Հայքը, անջատ Մեծ Հայաստանէն և Եփրատով անկէ բաժնուած (տես Hubschmann, Outen. էջ 216)։

Միայն ասով կրնայ արդարանալ Կապադովկիացի աշխարհագիր-պատմագիրին՝ Ստրաբոնի այն տեղեկութիւնները որոնց համաձայն «Փոքր Հայք ունէր, ինչպէս Ծոփաց աշխարհը՝ միշտ թագաւորներ կամ տոհմային իշխաններ, որոնք դաշնակից էին յաճախ բուն Հայոց կոչուած թագաւորներուն հետ, բայց առանձին եւս կը գործէին: Փոքր Հայոց իշխանները իրենց իշխանութեան տակ ունէին Խաղդիքը եւս»: (Ստրաբոն, ԺԲ. 3. 18)։

Ըստ Թէոտոր Րէյնախի, Միհրդատ Պոնտացիի ժամանակ եւս նոյն շրջանակը կը ճանչցուէր Փոքր Հայք անունով (տես Միհրդաս Եւպատոր, էջ 79)։

Այս հողին վրայ էր որ ապահովաբար կը կազմուէր 190ին (Քր.է առաջ) թագաւորութիւն մը, Միհրդատ անուն իշխանի մը ձեռամբ, անջատ Մեծ Հայաստանի, Ծոփաց աշխարհի, Կապադովկիոյ և Պոնտոսի թագաւորութիւններէն և անոնց միջեւ։

190ին կազմուած երեք Հայ «թագաւորութեանց» ճակատագիրը միեւնոյնը չեղաւ դժբախտաբար։

Փոքր Հայաստանի համար աղետաբեր եղաւ իր կողքին զարգացող և զօրացող Պոնտական թագաւորութեան դրացնութիւնը։

Թէոտոր Րէյնախ 190ին իրենց անկախութիւնը ստացող Մեծ Հայաստանի և Ծոփաց թագաւորութիւններուն վրայ խօսելով կ'ըսէ թէ «Երկու տէրութիւնները, թէպէտեւ կրեցին հակառակութիւն Սելեւկեանց Անտիոքոս Եպիփանի ատեն (Դիոս. Սիկ.) սակայն ամուր բռնեցին իրենց ազատութիւնը, առին շրջանակի գաւառները ամէն կողմերէն եւ կապուեցան ժամանակ մը նիզակակցութեան կապով *Փոքր Հայոց հետ*։ Բայց շուտով Մեծ Հայք, Արտաքսիասի թագաւորութիւնը, աւելի առաջադէմ եղաւ քան միւս երկուքը (Ծոփք եւ Փոքր Հայք) եւ անոր աշխարհակալութեան երկիւղը ստիպեց միւսները խնդրել օտարներու պաշտպանութիւնը: Յայտնի է, թէ ինչու Փոքր Հայք յարեցաւ սերտիւ Պոնտոսի, Փառնակի ատեն եւ անոր մէջ ձուլուեցաւ Միհրդաս Եւպատորի թագաւորութեան առաջին տարիներուն»: (Գարագաշեան, Քննական Պատմութիւն, էջ 130-131)։

Պոնտոսի թագաւորները Փոքր Հայքը բաժնեցին 5 նահանգներու և ստորաբաժնեցին 120 ստրատեգութեանց (տես Վալերի Բրուսով, Նոյն. ԲՋՄԳ, 1930, էջ 372)։

Պոնտոսի թագաւորներուն Փոքր Հայք գրաւելու իրողութիւնը կը հաստատէ նաեւ Ստրաբոն ըսելով որ «երբ սկսաւ զօրանալ Միհրդաս Եւ-

(1) Թ. Րէյնախ անոր մայրաքաղաքը ցոյց կուտայ Կարկաթիոկերտ «որ շինեալ էր ի վերայ բարձրաւանդակի, որ հայի ի դաշտ անդր Դկղաս գետոյ» ըստ Ստրաբոնի (ԺԱ. 14-15) (տես Գարագաշ. Քնն. Պատմ. էջ 130, Բրոֆ. Խաչատր. նոյն, էջ 41) Ե. Տիշոյեան (ՀԱՅ. ԿՈՉՆԱԿ, 1933, էջ 1016) կը կարդայ Արկաթիոկերտա և Խարբերդի կողմերը ցոյց կուտայ։

(2) Փոքր Հայք անունը զանազան դարաշրջաններու մէջ տրուած է զանազան երկիրներու, ուստի սխալ մը չընելու համար պէտք է նկատի ունենալ ժամանակը՝ ամէն անգամ որ այս անունին կը հանդիպինք։

Ցետնագոյն ժամանակներու մէջ Կիլիկիան ալ այդ անունով ճանչցուած է։

պատոր՝ առաւ այդ երկիրը ամբողջ, ինչպէս նաեւ Կողքիսը», *և կը յարէ թէ* «տեսնելով որ շատ օգուտ կար իրեն այս երկրէն՝ շինել տուաւ եօթանասուն եւ հինգ բերդեր, ուր տուներ իր գանձերուն մեծ մասին: Անոնցմէ կարեւորագոյններէն մէկն էր Մեծ Հայքի սահմանին վրայ: Գիտէր Միհրդատ, թէ անիրաւ դիւրութիւններ կրնար մտնել իրեն Պարխարի լեռնագօտին, ջրաւէտ եւ անտառախիտ, թէպէտեւ լի ձորերով եւ սարաւանդներով, որուն համար ընտրեց մանաւանդ հոն շինել իր գանձերու տուները:

Նաեւ Պոնտոսի թագաւորութեան այս վերջին ծայրը ընտրեց իրեն ապաստանարան Պոմպէոսի արագ արագ յաղթութեամբ յառաջացած ատեն եւ կանգ առնելով Եկեղեաց մէջ՝ գրաւեց Դաստիրայի մօտ — քիչ հեռու Եփրատէն, որ կը բաժնէ ինչպէս յայտնի է Եկեղեացը Փոքր Հայքէն — լեռ մը ջրարբի եւ մնաց հոն, մինչեւ որ այն վախով որ գուցէ կը պաշարուի հոն, մտադրեց անցնելով Պարխարէն մտնել ի Կողքիս եւ անկէ Վոսփոր: Նոյն տեղին մօտ, բայց Փոքր Հայքի մէջ, Պոմպէոս շինեց Նիկոպոլիս քաղաքը որ կայ մինչեւ այսօր եւ շատ բազմամարդ է: Այն շատ մը իշխաններէն, որոնք հաւանութեամբ Հռոմայեցիներուն տիրեցին Փոքր Հայոց՝ վերջինն եղաւ Արքեղայոս(1): Իսկ Խաղդեաց երկրէն մինչեւ Կողքիս կ'իշխէ հիմա Պիւթոդորիս, իմաստուն եւ տէրութիւնը վարելու վարժ կին մը: Ասիկա ունեցաւ երկու որդիներ եւ աղջիկ մը: Իր որդիներէն մին քիչ առաջ դրուեցաւ Մեծ Հայոց թագաւոր(2): Պիւթոդորիս ամուսնացաւ Արքեղայոսի հետ եւ անոր հետ մնաց յետոյ մինչեւ անոր մեռնիլը՝ հիմա այրի է եւ տէր այն երկիրներուն զոր արդէն յիշեցինք» (*Ստրաբոն ԺԲ. 3, 18*):

*Միհրդատի ընկճումէն և Տիգրանի նուաստացումէն յետոյ երբ Պոմպէոս վերակազմեց Հռոմէական Ասիան, Փոքր Հայքը որ Միհրդատ Եւպատորէն նուաճուած էր անջատեց Պոնտոսէն և տուաւ Դաղատիոյ Դիոտարոս թագաւորին, որ իբր Փոքր Հայոց թագաւոր տիրեց այս երկիրին* (56–34 *Քր.Ե առաջ*)։ (*Տոքթ. Հ. Յ. Աստուրեան*, Քաղաքական յարաբերութիւններ ընդմէջ Հայաստանի եւ Հռովմայ 190էն Ն. Ք. մինչեւ 428 Ք. Ք. *Վենետիկ* 1912, *էջ* 23 *և* 92):

*Պատմութիւնը կը յիշատակէ թէ Արտաւազդ Բ.* (56–34 *Ք.Ե առաջ*) *որ իր հօրը Մեծն Տիգրանի յաջորդած էր Մեծ Հայաստանի գահուն վրայ, մտերմական կապեր հաստատած էր Փոքր Հայքի Դիոտարոս թագաւորին հետ իր աղջիկը կնութեան տալով անոր որդիին*։ (*Հ. Սահակ Տէր Մովսէսեան*, Պատմ. Հայոց, *էջ* 289)։

*Անտոնիոս երբ Հայաստան արշաւեց և Արտաւազդը գերի բռնեց* (34 *Քր.Ե առաջ*), *Դիոտարոսի տեղ, որ չափազանց հռոմէասէր էր, իր գահը և իշխանութիւնը պարտելով Հռոմի, Փոքր Հայոց թագաւոր կարգեց Պոլեմոն՝ Անտոնիոսի քրոջ փեսան* (*Վալերի Բրուսով*, *Նոյն*, *ԲԶՄՊ*. 1930, *էջ* 376)։

*Օգոստոս՝ Փոքր Հայոց գահուն վրայ դրաւ Արտաւազդ Մարաց թագաւորը* (30 *Քր.Ե առաջ*) *և քիչ յետոյ այս երկիրը պարգեւեց Արքեղայոս Կապադովկիոյ թագաւորին, անգամ մըն ալ այս շրջանակը մաս դարձնելով Կապադովկիոյ, որուն կը պատկանէր երբեմն*։

*Ասոնք առանց պատճառի, լոկ պատահականօրէն կատարուած բաժանումներ չէին։ Անկարելի էր երկիր մը Հայաստան կոչել— ինչպէս Հռոմայեցիք կը կոչէին այս երկիրը, զայն* Փոքր Հայաստան (Armenia Minor) *անուանելով— երբ գոնէ հոն մեծամասնութեամբ հայ չէր բնակչութիւնը։ Այլապէս իմաստ պիտի չունենար այս անունը որ անոր կը տրուէր*։

*Իսկ թէ ինչո՞ւ հայաբնակ այս շրջանակը յանձնուեցաւ անգամ մըն ալ Կապադովկիոյ, շատ դիւրահասկնալի է*։

*Հռոմ՝ հաւատարիմ Կապադովկիացիներու վարչութեան ենթարկելով երկիրը, կ'ուզէր միացնել Հռոմէական երկիրներուն և զայն սերտօրէն կապել իր իշխանութեան, հիմնուելով պատմական այն իրողութեան վրայ որ այդ երկիրը երբեմն Կապադովկիոյ մասն էր, և Հայերը իրենց թիւի գերակշռութեամբ հայացուցած էին։ Ուրեմն այդ երկիրը՝ երբեմն մասը ընդարձակագոյն իմաստով առնուած Կապադովկիոյ, լեցուն էր հայերով*։

*Հայերը յայտնապէս կը ձգտէին դէպի արեւմուտք և կը լեցնէին արեւմտեան մասերը Կապադովկիոյ, զայն Հայաստան դարձնելու աստիճան*։

*Եփրատի արեւմտեան կողմը Հայերու այնքան մեծ թիւ մը, բնական է* 300*էն* 190 (*Քր.Ե առաջ*) *մօտաւորապէս հարիւր տարիներու համեմատաբար կարճ ժամանակամիջոցին մէջ յանկարծ չգոյացաւ*։

*Աւելի հաւանական է մտածել թէ հին ժամանակներէ ի վեր այդ երկիրներու մէջ ամբողջ խառն բնակչութեան մէջ գտնուող Հայ տարրն էր որ քաղաքակրթական նուաճում մը գործադրած էր իր գերակշռութիւնը զգալի ընելով և իր մէջ ձուլելով ուրիշ ցեղեր*։

*Ժամանակը և այդ ժամանակին յատկանիշ եղող պատերազմելու մեթոտներն ալ նուազ դեր կատարած չեն անշուշտ ժողովուրդներու տեղափոխութեան մէջ, որ կատարուած է իբր տեսակ մը գերառութիւն*։

*Այնպէս որ հաւանական է ենթադրել թէ Հայեր նոյնիսկ պատերազմական պատճառներով փոխադրուած են Կապադովկիա և փոխադարձաբար Կապադովկիացիք՝ Հայաստան, ինչպէս անգամ մը Տիգրան Մեծ ըրաւ* 300.000 *անձ Մաժակէն և այլ քաղաքներէն փոխադրելով իր երկիրը* (77) *մանաւանդ իր մայրաքաղաքը՝ Տիգրանակերտ* (*տես էջ* 182)։

*Ասոնք Տիգրանի պարտութենէն վերջ թէև ազատ թողուեցան դառնալու համար իրենց տեղերը, սակայն միշտ մաս մը մնացին Տիգրանակերտի մէջ*։

*Ստրաբոն որոշապէս կ'ըսէ թէ Մաժակի բնակիչները* «շատ նեղուեցան հայազգի Տիգրանէն՝ երբ Կապադովկիա արշաւեց, վասնզի զիրենք ամէնքը փոխադրեց Միջագետք եւ Տիգրանակերտ քաղաքը մեծ մասամբ իրենցմէ բնակեցուց: Բայց յետոյ՝ Տիգրանակերտի առնուելէն յետոյ՝ կրցողը դարձաւ», *ուրեմն, չկրցողը՝ այսինքն մաս մը մնաց, և քաղաքին բնակչութեան մէկ մասը կազմեց, ինչպէս կը կարծէ Մոմսէն*։

*Ասոնք ամէնը ցոյց կուտան թէ Եփրատը թէեւ կը նկատուէր Հայաստանի սահմանը բայց երբեք չեղաւ հաստատուն պատուար մը Հայ ցեղին բնակավայրը իր դրացիներէն բաժնող, վասնզի ինչպէս Եփրատի արեւմտեան կողմը բաւական ստուար թուով հայեր հաստատուած էին նոյնպէս նաեւ անոր արեւելեան կողմը բաւական նշանա-*

---

(1) *Կապադովկիոյ թագաւորը* (*տես վերը էջ* 189–191)։

(2) *Ակնարկ Զենոնի, որ Հայոց թագաւորեց Արտաշէս Գ. անունով* (17-35)։

կելի թուով Փոքր Ասիացիներ՝ մասնաւորապէս Կապադովկիացիներ հաստատուած էին, այնպէս որ Եփրատի և Ալիսի ակնաղբիւրներուն շրջակայքը զուտ և անխառն բնակչութիւն մը չէր որ կ'ապրէր։

Ասոր փաստը կուտայ մեզի նաեւ հռոմէացի զօրավարներու Փոքր Ասիոյ մէջ ըրած ինչ ինչ կարգադրութիւնները, որոնք բաւական ուշագրաւ են, և կը հաստատեն թէ ինչպէս Եփրատի Արեւմտեան կողմը ստուար թուով հայեր կային, անոր արեւելեան կողմն ալ գոնէ նշանակելի թուով կապադովկիացիներ կային։

Տեսանք թէ Պոմպէոս՝ Փոքր Հայքը անջատեց Պոնտոսէն և տուաւ Գաղատիոյ Դիոտարոս թագաւորին, զայն կոչելով «Փոքր Հայոց թագաւոր»։

Այդ կարգադրութիւնը ըրած ատեն Պոմպէոս Ծոփքն ալ կը նուիրէ Կապադովկիոյ Արիոբարզան թագաւորին (56 Քր.է առաջ) (Տօք. Հ. Յ. Ասատուրեան, Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի եւ Հռովմայ, 190էն Ն. Ք. մինչեւ 428 Յ. Ք. Վենետիկ, էջ 23 և 92)։

Արդ, եթէ Եփրատէն անդին գտնուող Ծոփքը՝ զուտ հայ բնակչութիւն մը ունենար դժուար էր որ Պոմպէոս զայն Կապադովկիոյ Թագաւորին նուիրէր։ Եւ որոշ է որ Դ. Հայք՝ ուր էր Ծոփք զուտ հայ բնակչութիւն չունէր, վասնզի Ստրաբոն գիտէ թէ Եփրատէն «անդին եղող ազգեր» «միջանկեալ այլեւայլ լեզուներով» կ'ապրէին Հայաստանի և Կապադովկիոյ միջեւ, որոնք յետոյ հայացած էին կամ հայերէն կը խօսէին։

Ասոնց հետքերը կը մնային նոյնիսկ աւելի ուշ ժամանակներու մէջ, այսինքն Քր.է յետոյ Զ. և Է. դարերուն իսկ։

Հետեւաբար Եփրատի երկու եզերքները, ունէին խառն բնակչութիւն, և Հայք և Կապադովկիացիք փոխադարձաբար իրարու երկրին մէջ տարածուած էին, անշուշտ աւելի մօտաւոր սահմաններուն վրայ աւելի խիտ և աւելի հեռուն աւելի ցանցառ։

Հոս աւելորդ չըլլայ միայն դիտել տալ թէ Արգէոսի անմիջական մերձաւոր շրջանակին մէջ այս շրջանին յատկապէս Հայերու գոյութիւնը յիշուած չենք տեսներ սակայն վստահութեամբ կրնանք ենթադրել։

Կապադովկիոյ արեւելեան մասին մէջ այսքան գերակշիռ դիրք ունեցող ցեղը, որ միշտ իր շփումը պահած էր Կապադովկիոյ հետ ցեղային և քաղաքական պատճառներով, անկարելի էր որ Կապադովկիոյ արեւմտեան մասին մէջ ալ գոնէ նուազ թուով տարածուած չըլլար, երբ Հայ և կապադովկեան յարաբերութիւնները այնքան եղբայրական էին և մտերիմ։

Հայաստան ո՛չ միայն ապաստան կ'ընծայէր Մակեդոնացիներէն բնաջնջուած Արիարաթ Ա.ի ընտանիքէն փրկուած միակ իշխանին, այլ Հայաստանի թագաւորը Արդուարդ զայն հայ զօրքով իր հօրը գահը կը բարձրացնէր (տես էջ 166)։

Անոնք յաճախ դաշնակից են, ինչպէս 190էն առաջ, նոյնպէս յետոյ։

Այսպէս 190էն քիչ յետոյ Կապադովկիա, Պոնտոս և Փոքր Հայք, նախկին Մեծ Կապադովկիոյ հողերուն վրայ կազմուած թագաւորութիւնները իրարու կը զինակցին և 180ին անոնք կը դաշնակցին Պերգամոնի և Բիւթանիոյ իրարու զինակից թագաւորներու հետ,



կազմելու համար զօրաւոր միութիւն մը (տես էջ 171)։

Նշանակելի է որ Կապադովկիա, Պոնտոս և Փոքր Հայք, իբր բնական զինակիցներ, ամէնէն առաջ իրարու կը միանան։

Քիչ յետոյ Կապադովկիան կը տեսնենք նաեւ դաշնակից դրացի Ծոփաց Հայ թագաւորութեան (տես էջ 172)։

Նոյնիսկ Կապադովկիոյ հնագոյն թագաւորներէն մէկուն Արիարամի կամ Արիամնէսի (280–230 Քր.է առաջ) համար ըսողներ կան (ինչպէս դրամագէտ պ. Բարսեղ Օհանեան) որ ան հայ իշխան մըն էր, վասնզի իր միակ ծանօթ պղինձէ դրամը՝ որ կը գտնուի Պերլինի թանգարանին մէջ նոյնանմանութիւն ունի և հաւանականաբար միեւնոյն փողերանոցին մէջ և գրեթէ միեւնոյն թուականին զարնուած է Հայ ամենահին դրամին՝ Արշամի (ΒΑΣΙΛΕΩΣ ΑΡΣΑΜΟΥ) (230ի շուրջ) պղնձադրամին հետ և ունի միեւնոյն կճիռքը և ետեւի կողմը հայկական համբաւաւոր այրուձին (այլ գիրքի մէջ[1])։

Հ. Սահակ Տէր Մովսէսեան (Պատմ. Հայոց, էջ 175) Ծոփաց թագաւորներու դրամներուն վրայ խօսելով կ'ըսէ թէ անոնք դրոշմուած են թագաւորութեան մայրաքաղաքին Արշամաշատի փողերանոցին մէջ, «որ արուեստի կեդրոն մըն էր» ինչպէս ցոյց կուտային «կատարելատիպ եւ սքանչելի քանդակներով դրամները»։

Եթէ Մխիթարեան վարդապետին այս հաւաստումը ճիշդ է, ուրեմն Արիարամ թագաւորի դրամը տպուած է Արշամաշատի փողերանոցին մէջ։

Քայլ մը եւս առաջ կարելի է երթալ, եթէ Պ. Բարսեղ Օհանեանի Արիարամի հայ ծագման ենթադրութիւնը հաստատող ուէ զօրաւոր ապացոյց գտնուի, և ըսել թէ Խորենացիի աւանդական Արամին պատմութիւնը՝ Կապադովկիոյ տիրապետութեան մասին, արձագանգն էր Արիարամի պատմութեան։



ԱՐՇԱՄԻ ԴՐԱՄԸ

Հոս փակագիծի մէջ ներուի դիտել տալ թէ բոլոր Կապադովկիոյ

(1) Կ. Յ. Բասմաջեան (տես Սիոն, 1934, էջ 309) այս դրամին վրայ գտնուած ձիաւորը կը հաստատէ թէ մեծ նմանութիւն ունի Կապադովկիոյ Արիարամնէս թագաւորին պղինձէ դրամին երկրորդ կողմին, ինչպէս դիտած է Ernest Babelon, իր Les rois de Syrie, d'Armenie et de Commagène, Paris, 1890 գործին մէջ (երես CXCIII)։ Կ. Յ. Բասմաջեան կը կարծէ թէ այս դրամը ո՛չ թէ Ծոփաց այլ Կապադովկիոյ և կամ՝ աւելի հաւանականօրէն՝ Կոմմագենէի վրայ իշխող թագաւորներէն մէկուն կը պատկանի, ասոր իբր ապացոյց կ'ըսէ թէ Կոմմագենեցիք Քր.է առաջ 140ին՝ «Սամէս» անունով թագաւոր մը ունեցած են, որուն մայրաքաղաքն էր Սամոսատ, Շամուշատ կամ Շամշատ և որուն դրամին վերտառութիւնն է՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΣΑΜΟΥ այսինքն «Արքայի Սամիայ»։

Եթէ Կ. Յ. Բասմաջեանի տեսութիւնը ճիշդ է այս ուղղութեամբ Հայ և Կապադովկեան առընչութեան մէկ թելը կը խզուի։

թագաւորները իրենց անունին սկիզբը կը կրեն «Արի» մասնիկը (Արիարաթ, Արիոբարզան, Արիարամ) որ կ'երեւայ թէ Արեւելքի մէջ սովորական եղող երեւոյթի մը համաձայն, թագաւորներու տրուած ընդհանուր տիտղոսի մը հանգամանքը ունի կամ նոյնիսկ արիական արի (= քաջ = ազնուական) բառին իմաստը։

Եթէ ճիշդ է մեր այս տեսութիւնը Արի–Արամ կը դառնայ Արամ և այս նոյնացումը աւելի եւս կը շեշտուի։

Սակայն Արիարամի հայ իշխան մը ըլլալու հաւանականութիւնը մէկ կողմ թողլով — որ այնքան ալ էական չէ Կապադովկեան երկիրներու մէջ Հայերու գոյութիւնը հաստատելու համար,— «Փոքր Հայք»ի թագաւորութեան կազմութիւնը (190ին), Եփրատէն արեւմուտք գտնուող հողերուն վրայ, բաւականէն աւելի զօրաւոր փաստ մըն է Հայ ցեղին դէպի արեւմուտք տարածումին և դէպի Կապադովկիա բնակութիւն հաստատելուն։

Շատ որոշ փաստեր տուի թէ Եփրատը հաստատուն սահմանագիծ մը չէր Հայ ցեղին բնակութիւնը ճշդող և Եփրատէն անդին դէպի Արեւմուտք մեծ թուով Հայեր կային, ինչպէս Եփրատէն ասդին մեծ թուով կապադովկիացներ, և երկու ազգերը Ալիսէն Եփրատ տարածուած հողերուն մէջ և անկէ ալ անդին, երկու գետահովիտներուն մէջ գրեթէ իրարու խառնուած կ'ապրէին։

Կապադովկիոյ ամէն մասերուն, և յատկապէս Արգէոսի շուրջն ալ հայաբնակ ըլլալուն համար եթէ սակայն որոշ տուեալներ չունինք սակայն ինչ ինչ յիշատակութիւններ մեզի կրնան առաջնորդել որոշ եզրակացութիւններու։ Այսպէս պատմութիւնը կը յիշատակէ Տիրան անուն հայ մը, աշակերտ Դիոնեսիոս Թրակացի քերականին որ իբր հելլէն լեզուի ուսուցիչ արտակարգ փայլ մը ունեցաւ Հռոմի մէջ։

Այս Հայը՝ Հռոմէացւոց համար Թանկագին համարուող քերականութեան արուեստը շատ լաւ գիտէր։

Լուկուլլոս հիանալով իր տաղանդին զայն Հռոմ կը տանի։ Տիրան հոն կը հասնի մեծ դիրքի և փառքի։

Անիկա առաջին անգամ գրատուն մը կը բանայ և գրավաճառութեամբ կ'զբաղի։

Սուիտաս կը վկայէ որ անիկա 30.000 գիրքեր հաւաքած էր։ Ան անգնահատելի ծառայութիւն մատուցած է Կիկերոնի (106–43 Քր.է առաջ) կարգին դնելով անոր ցրուած ու խառնակուած մատեանները։

Տիրան նաեւ գրագէտ էր, մանաւանդ քաջ արտասանող իբր քերական և Կիկերոն այնքան կը յարգէր զայն որ իր տան մէջ քերականութեան վարժատուն բացաւ, ուր կը յանձնէին Հռոմայեցի տղաք մարզուելու համար գեղեցիկ դպրութեան մէջ (տես Ռօլէնի Հնախօսութիւն, հտ. Զ. էջ 114, տես նաեւ ԲԶՄԴ. 1927, էջ 170–171)։

Դժբախտաբար չէ յիշուած թէ Տիրան ուր տեղացի էր։ Սակայն նկատելով որ Լուկուլլոս է որ զայն Հռոմ տարած է հիանալով իր տաղանդին վրայ կրնանք ենթադրել թէ այդ Հայը եթէ Կապադովկիայէն չէ գէթ հոն ուսում առած պէտք է ըլլայ, վասնզի հելլենական ուսմանց համար Հայաստան չէր ներկայացներ այն դիւրութիւնները որ ունէր Կապադովկիա, ուրկէ և Պոնտոսէն թափանցեց հելլէն քաղաքակրթութիւնը դէպի Հայաստան։



մշակոյթին
Կապադովկիա իբր կամուրջ ծառայած է յունական
դէպի Հայաստան թափանցումին և հակառակ անոր որ ինքն նուաճ-
ուած է Հայոց կողմէ ժամանակաւորապէս, սակայն քաղաքակրթապէս
ինքն նուաճած է Հայոց աշխարհը, հակառակ որ այլեւս բարեկամ
ըլլալէ դադրած էին երկու ազգերը։
Կապադովկիացւոց դէպի Հռոմ և
Այս թշնամութեան պատճառը
դէպի յունական քաղաքակրթութիւնը մեծ յարումն էր։ Կապադովկիա
իբր հաւատարիմ Հռոմի դէմ կը կանգնէր Պոնտոս–Հայկական զինակ-
ցութեան, և կը յարէր արեւմուտքի և Բիւթանիոյ թագաւորին հետ
զինակցութիւն մը կը կազմէր։
Տիգրան Մեծ իբր թշնամի
Ահա թէ ինչո՞ւ Միհրդատ Եւպատոր և
վարուած են Կապադովկիոյ հետ և բազմաթիւ յարձակումներ գործած
են Կապադովկիոյ վրայ, ուր ուզած են թագաւորեցնել Միհրդատի
որդին՝ Արիարաթ Ը.ը, մինչ Հռոմ կ'ուզէր հոն դնել Արիոբարզան
Ա.ը (96–63), որ վեց անգամ ստիպուեցաւ հեռանալ իր գահէն։
աւելի կը
Այս պատերազմներու միջոցին յարաբերութիւնները
շեշտուեին, վասնզի որքան որ ալ կարճ ըլլայ տեւողութիւնը, իրա-
կանութիւն մըն է որ կարճ շրջան մը Հայ տիրապետութեան ենթարկ-
ուած է Կապադովկիա (տես վերը 178–180)։
թագաւորներուն
Հայկական դրամներով Կապադովկիոյ մի քանի
(Արիարաթ Բ.ի, Արիարամի և այլ) իրենց նախնեաց գահը բարձրա-
նալու պարագան և Տիգրան Մեծի արշաւանքները դէպի Կապադով-
կիա անշուշտ անարձագանգ չեն մնացած և Հայ երգիչները զանոնք
երգած են։

Խորենացի, որուն պատմութիւնը զրոյցներու հաւաքածոյ մը նկատելով հանդերձ, իբր աւանդութիւններու գիրք մը, կրնայ ծառայել տալու ինչ ինչ լուսաբանութիւններ, իր մի քանի հատուածներուն մէջ արձագանգ կ'ըլլայ այս իրողութեան։



ԴԻՄԱՆԿԱՐ ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ
(Ըստ Բրիտանական Թանգարանի Զորէֆդրամեանին)

Հետեւաբար բոլորովին սուտ չեն իր պատմածները, այլ կայ անոնց մէջ ճշմարտութեան մը ստուերը, քանի որ անժխտելի է սա իրողութիւնը թէ — թող ըլլայ դէմքերու և դէպքերու և ժամանակի խոշոր վերիվարումներով — Կեսարիա երբեմն ենթարկուած է հայկական տիրապետութեան և թէ Հայ գաղութներ գոյութիւն ունեցած են Փոքր Ասիոյ մէջ։

Խորենացի առաջին անգամ առասպելական Արամ նահապետին կը վերագրէ Կեսարիոյ տիրապետութիւնը, անշուշտ արձագանգ ըլլալով ժողովրդական երգերու։

Անիկա կ'ըսէ թէ Արամ «ապա յարեւմուտս հարձեալ ի վերայ առաջնոյն չորիւք բիւրովք հետեւակազօրու եւ երկու հազար հեծելովք՝ հասանէ ի կողմանս Կապադովկացւոց ի տեղի մի, որ այժմ ասի Կեսարիա: . . . . պատահէ նմա Պայապիս Քաաղեայն Տիտանեան պատերազմաւ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց՝ զՊոնտոսն եւ զՈվկիանոս(1): Որում ի դիմի հարեալ վանէ, փախստական արկանելով ի կղզի ինչ ասիական ծովուն: Եւ իւր թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ, եւ բիւր մի ի զօրացն ի վերայ աշխարհին, եւ ինքն դառնայ ի Հայս: Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին ուսանել զխօսս եւ զլեզուս հայկական, վասն որոյ մինչեւ ցայսօր ժամանակի անուանեն Յոյնք զկողմանն զայն՝ Պռոտին Արմենիան, որ թարգմանի՝ Առաջին Հայք: Եւ զդաստակերտն, զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ՝ փոքրագունիւք պարսպեալ որմովք, անուանէին հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել, մինչեւ յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա: Ըստ նմին օրինակի ի տեղեացն այնոցիկ մինչեւ ցբուն իւր սահմանսն, զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ եւ Երրորդ անուանեցան Հայք, այլ եւ Չորրորդ»: (Ա. դպ. գլ. ԺԴ.):

*Մշակին առասպելը պէտք է ըսել թէ Խորենացին ինքը չէ ստեղծած։*

*Փիլոստորգիոս և Կոստանդին Պերփիւռածէն յոյն պատմագիրները իրենք ալ կը հաստատեն առասպելական* Մշակ *կուսակալին գոյութիւնը՝* Մոսոք *անուն անձ մը համարելով Կապադովկիոյ առաջին իշխանը* (Զամ. Պատմ. Հայոց Ա. էջ 74)։

*Յովսեպոս* (Ա. 6) *հրեայ պատմիչը նոյն աւանդութեան արձագանգ կ'ըլլայ* Մազակ *քաղաքին անունը առնուած ցոյց տալով Մոսոքէն որ Յաբեթի որդին էր, և Մաժակեցիները կը կոչէ նաև Մոսոքեցիք, սերեալ Մոսոքէն և կը յարէ թէ հիմա Կապադովկիացի կը կոչուին։ Քաղաքին Մաժակա կոչումը փաստը կը ներկայացնէ ամբողջ ազգին երբեմն նոյն անունով կոչուած ըլլալուն։* (2)

*Միայն հետաքրքրական է որ Խորենացի՝ որ կ'ուզէ Կեսարիան հայացնել, Մաժակը և իր բնակիչները Հայ կը շինէ և ամբողջ երկիրը Հայ բնակչութեամբ լեցուած ցոյց տալ կ'ուզէ, անգիտանալ ձեւացնելով թէ անոնք Կապադովկեան երկիրներ էին ուր Հայք յետոյ, ժամանակի ընթացքին հետզհետէ չեչտուած մեծամասնութիւն մը ունեցան։ Սակայն ինքզինքին կը հակասէ երբ կը հաստատէ թէ գոնէ առասպելական բռնաւոր մը իր իշխանութեան տակ ունէր* «զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց՝ զՊոնտոսն եւ զՈվկիանոս», *այսինքն բոլոր այն տարածութիւնը որ հնագոյն ժամանակներու Կապադովկիան կը ներկայացնէր։*

*Եթէ հոն տիրապետող մը կար, ապա ուրեմն տիրապետեալներ կային, և երկիրը դատարկ չէր։*

*Խորենացի շատ դիւրահասկնալի է թէ ազգայնամոլ իր տրամադրութեամբ չ'ուզեր վերջէն Հայերէն նուաճուած և բնակուած ցոյց տալ այդ երկիրները որոնք իր հայրենիքին անբաժան մասը կ'ուզէ համարել, ուստի զանոնք անբնակ կը դարձնէ, որպէսզի անոնց նախնական ծագումը մոռցնէ և առաջին անգամ իսկ Հայերով բնակուած ցոյց տայ։*

*Նկատելի է որ Խորենացի ո՛չ միայն Կապադովկիոյ Հայկական տիրապետութեան արձագանգ կ'ըլլայ այս հատուածին մէջ այլ կը մեկնաբանէ նաեւ Փոքր Հայոց հայաբնակ դառնալը, Կեսարիայէն* «մինչեւ ցբուն իւր սահմանսն» «զբազում անբնակ երկիր» *լեցնել տալով Արամին՝ բնակիչներով։*

*Որքան ալ որ անհեթեթ ու ծիծաղելի ըլլայ այս տեսակ կարծիք մը, զայն պէտք է ընդունինք իբր արձագանգը հին աւանդութեան մը որ տակաւին Խորենացիին ատեն ազգին մէջ կ'ապրէր։*

*Անկէ զատ Խորենացի Երուանդեան Տիգրան թագաւորին վրայ խօսելով զայն կը դրուատէ իբր* «ամենեցունց թագաւորացն մերոց հարուստագոյն եւ խոհեմագոյն, ու արանցն այնոցիկ եւ ամենեցուն քաջ» *և կը յարէ թէ* «որ եւ Կիւրոսի աջակցեալ, զՄարացն ի բաց բառնայով զիշխանութիւնն, եւ զՅոյնս ալ սակաւ ժամանակս ընդ իւրեաւ նուաճեալ հնազանդէր: Եւ զսահմանս մերոյ բնակութեանս ընդարձակեալ՝ ի հինսն մեր հասուցանէր յեզերս ծայրից բնակութեան»: *(Խորեն. Ա. դպ. ԻԴ. գլ.)։ Ուրեմն Խորենացի Երուանդեան Տիգրանի շրջանին Հայերը դարձեալ տիրապետող կը դարձնէ Փոքր Ասիոյ, վասնզի մեր պատմիչները գիտենք թէ Յունաստան ըսելով առ հասարակ Փոքր Ասիան կը հասկնային, և այս պարագային ալ Խորենացի ուրիշ իմաստով չէ որ կը գործածէ։ Ուրեմն առասպելական Արամին վերագրուածին պէս Տիգրան Երուանդեանին ալ ան կուտայ Փոքր Ասիոյ գոնէ մէկ մասին տիրապետութեան փառքը, քանի որ մինչեւ Հայաստանի հին սահմանները և բնակութեան՝ այսինքն Հայ բնակչութեան ապրած երկիրներուն ծայրը կը տանի։ Այս բնակութեան ծայրը՝ Արամին լեցուցած դատարկ երկիրը կամ հին Կապադովկիան էր իր ըմբռնումով։ Նոյնպէս Խորենացի առասպելական Արտաշէս աշխարհակալին կը վերագրէ դէպի Արեւմուտք արշաւներ, և Լիւդացւոց Կրեսոս թագաւորը գերի առնելու պատիւը, — որ պարսից Կիւրոս թագաւորին կը պատկանի — ինչպէս նաեւ կ'ըսէ թէ* «Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց՝ լնու զՈվկիանոս բազմութեամբ նաւաց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արեւմուտս» *(Բ. դպ. գլ. ԺԲ.), և մինչեւ Յունաստան անոր տիրապետութիւնը կը տարածէ։*

*Նոյնպէս Տիգրան Մեծի մասին, իր մեծ մասամբ օտար պատմիչներու անհամաձայն գրածները, (Բ. դպ. գլ. ԺԴ–ԺԹ) հակառակ իրենց առասպելական կազմուածքին՝ կրնան մէկ աստիճան իրողութեանց արձագանգը համարուիլ։*

---

(1) *Ովկիանոսը՝ Միջերկրական է։*

(2) *Այս առասպելէն ռուս հեղինակ մը Միչկեվիչ, տարուած ռուս Զարական շրջանի համասլաւական խոլէալէն, վառ երեւակայութեամբ մը, համաշխարհային սլաւոնականութեան նպաստ մը բերած է, Մշակ անունը սլաւոնական մուժիկ (=ռամիկ) բառին հետ նոյնացնելով, և գրած միամտօրէն և առանց վարանման թէ «ըսուած է, որ* 1030 *տարի Քր.է առաջ, Հայ իշխան մը նուաճած է Կապադովկիան. Կապադովկիայի թագաւորը կը կոչուէր Մուժիկ»։ Այս միեւնոյն հեղինակը Սուր և Ասուր ազգերը Սերպերուն հետ նոյնացուցած և Փոքր Ասիան և Միջագետքը ամբողջ երբեմն Սլաւներով բնակուած ցոյց տուած ըլլալով, անշուշտ ոչ մէկ արժէք կարելի է տալ այս մեկնութեան (տես,* Մովսէս Խորենացու հայկական պատմութիւն *աշխարհաբար թարգմանեց և լուսաբանեց Խորէն Ծվրդ. Ստեփանէ, տպ.* 1889 *Ս. Պետերբուրգ. Ծանօթութիւններ էջ* 49–51)։

Խորենացի, արդարեւ աղօտօրէն գիտէ Կապադովկիոյ տիրապետութիւնը Տիգրանի ձեռամբ, վասնզի կ'ըսէ թէ Տիգրան «ժողովեալ զզօրս Հայոց ընդդէմ երթայ զօրացն Յունաց, որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ եւ ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր: Որոց ընդդէմ պատահեալ Տիգրանայ՝ արգելեալ ի վերջ նահանջէ: Եւ ի քեռայր իւր Միհրդատ հաւատացեալ զՄաժաք եւ զինքս Միջերկրայցն եւ զօր բազում թող-եալ առ նմա՝ դառնայ յաշխարհս մեր»: (Դպ. Բ. գլ. ԺԴ.):

Ուրիշ տեղ մը (Դպ. Բ. գլ. ԺԶ.) կ'ըսէ թէ «Պոմպէի պատերազմեալ ընդ Միհրդատայ՝ տեսանէ սաստիկ ընդդիմակացութիւն եւ անագին մարտս, եւ վտանգի յոյժ. սակայն բազմութեանն յաղթեալ՝ փախստական լինի Միհրդատ ի կողմանս Պոնտոսի: Յորմէ իբրեւ զերծեալ Պոմպէոս, որում ակն ոչ ունէր, եւ առեալ զՄաժաք, եւ կալեալ զորդի նորա զՄիհրդատ՝ նստուցանէ զօր ի քա-ղաքին. ինքն ոչ հետամուտ լինի նմա»:

Այս տողերը տարտամօրէն կը պահեն յիշատակը Հայ-Պոնտական զինակցութեան և Տիգրան և Միհրդատ թագաւորներու Կապադովկիոյ վրայ ըրած արշաւներուն։

Նոյնը կը հաստատեն նաև այն տողերը որոնց համաձայն իբր թէ Պոմպէոս «գաղտ ի հաշտութիւն խօսեցեալ ընդ Տիգրանայ՝ տայ զքեռորդին նորա զպատանին Միհրդատ, զորդին Միհրդատայ, զոր կալեալ էր Պոմպէի ի Մա-ժաք, ասելով թէ գաղտ գնաց»: (Դպ. Բ. գլ. ԺԶ.):

Խորենացի միշտ այնպէս մը կը ներկայացնէ որ Կեսարիա = Մա-ժակ, Կապադովկիոյ համբաւաւոր մայրաքաղաքը, հայկական տիրա-պետութեան տակ եղած է երկար ատեն և իբր վերջին դրուագ անոր անդարձ կորուստին պատմութիւնը կը ներկայացնէ այսպէս.

«Զայսու ժամանակաւ թերահաւատութիւն լեալ Տիգրանայ ի պատանին Միհրդատ, ոչ զիւրն կարծելով քեռորդի. չտայ նմա մասն ինչ իշխանութեան, այլ եւ ոչ զիւր աշխարհն Վրաց: Եւ Միհրդատայ արհամարհութիւն կրեալ ի քեռւոյն իւրմէ Տիգրանայ՝ ապստամբութեամբ անկանի առ Կեսար. իշխանու-թիւն գտեալ ի նմանէ զՊերգեայ քաղաքի, զօրավիգն օգնականութեան լինի Անտիպատրոսի հօր Հերովդի, Կեսարու հրամանաւ: Սա շինէ զՄաժաք ընդար-ձակագոյն եւ պայծառ շինուածովք, եւ անուանէ Կեսարիայ ի պատիւ Կեսարու: Եւ յայնմ հետէ բարձեալ լինի իշխանութիւնն Հայոց ի քաղաքէն յայնմանէ» (Խորենացի Բ. դպ. ԺԸ. գլ.):

Ուրեմն Խորենացի Արամով Կապադովկեան Հայոց իշխանութեան կ'ենթարկէ և Արտաշէսի և երկու Տիգրան թագաւորներուն կ'ընծայէ այդ շրջաններուն տիրապետութիւնը, որ իբր թէ կը կորսնցնեն Հա-յերը Մեծն Տիգրանի ժամանակ։

Իր պատմածները՝ ինչպէս կը տեսնուի վաւերական տուեալներով հաստատուած պատմութեան հետ համաձայն չեն և հազիւ տեղ տեղ հանգիտութիւններ կը ներկայացնեն անոր հետ։

Արտաքին պատմիչներ Տիգրանի աշխարհակալութիւններէն առաջ — որոնց ընթացքին Ասորիք, Փիւնիկէ, Կիլիկիա գրաւուեցան — Եփրատի արեւմտեան եզերքները Հայոց տիրապետութեան ներքեւ ինկած ըլլալը բնաւ չեն յիշեր, միայն կը յիշեն ինչ ինչ դրուագներ ուր Հայ բանակներ օգնութեան կը փութան Կապադովկիոյ։

Սակայն անժխտելի է որ Հայերու մէջ կենդանի էր Կապադովկիոյ երբեմն հայկական տիրապետութեան ենթարկուած ըլլալու աւան-դութիւն մը որուն արձագանգ կ'ըլլայ նաև Խորենացիէն ժամանա-



կով աւելի կանուխ և աւելի ստուգաբան ժամանակագիր մը՝ Փաւս-տոս Բիւզանդացի որ կը պատմէ շատ հետաքրքրական դէպք մը, ուրկէ կը հասկցուի թէ Դ. դարուն Հայերը գիտէին որ Կեսարիան երբեմն իրենցը եղած էր, տասը ուրիշ քաղաքներու հետ։

Պապի թագաւորութեան շրջանին վրայ խօսելով Փաւստոս Բիւ-զանդացի կ'ըսէ.

«Եւ շրջեցաւ զմիտս իւր թագաւորն Պապ եւ խոտորեցաւ զսիրտ իւր ի թագա-ւորէն Յունաց, եւ կամեցաւ խառնել զանձն իւր եւ առնել միաբանութիւն ընդ թագաւորին Պարսից: Եւ սկսաւ թիկունս իւր առնել զարքայն Պարսից, եւ ար-ձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան: Եւ առաքէր հրեշտակս առ թագաւորն Յունաց, եթէ Կեսարիա հետ՝ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր, եւ զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց, արդ եթէ ոչ կամիս խանգար ինչ առնել, տուր ի բաց, ապա թէ ոչ, կռուիմք մեծաւ պատերազմաւ»: (Դպ. Ե. գլ. ԼԲ.):

Փաւստոսի այս տողերը ցոյց կուտան թէ Պապ, որուն գրեթէ ժա-մանակակից է ինքն պատմագիրը, պահանջած է Կեսարիան, Ուռհան (= Եդեսիա = Ուրֆա) և տասը քաղաքներ — որոնց անունը դժբախ-տաբար չի տար — չհակելու համար Պարսից կողմը։

Եւ այս պահանջը Պապ ինչպէս կը տեսնուի հիմնաւորած է անց-եալին Հայ տիրապետութեան վրայ, քանի որ կ'ըսէ թէ «մեր լեալ է», ինչ որ կը հաստատէ թէ ամուր աւանդութիւն մը, կամ աւելի ճիշդ հաստատուն համոզում մը, գոյութիւն ունէր Հայոց մէջ թէ Կե-սարիա երբեմն Հայոց պատկանած էր, միայն դժբախտաբար չէ ճշդը-ւած թէ Պապին ակնարկութիւնը՝ ի՞նչ շրջանի մասին է։

Պապի թագաւորութեան տարիները ըլլալով 309էն 374, Տիգրան Մեծի Կեսարիոյ տիրելէն մօտաւորապէս չորս հարիւր յիսուն տարի-ներու պատկառելի շրջան մը անցած էր մինչեւ Պապ, սակայն այդ տիրապետութիւնը կամ անոր աւանդութիւնը այնքան մեծ տեղ գրաւած էր որ չէր մոռցուած և Պապ զայն կը յիշէր։

Ասիկա չափազանց բնական էր, երբ մտածենք թէ Տիգրանի աշ-խարհակալութիւնները որոնք ազգային փառասիրութիւնը գգուելու հանգամանք ունէին, այդ անգիր ժամանակներու մէջ շատ բնականօ-րէն երգուած և ժողովուրդին մէջ պահուած ու պահպանուած էին։ Տիգրանի հերոսական պայքարը երգուած էր միշտ յաջորդ ժամա-նակներու մէջ ալ և անոնց էր որ արձագանգ եղած էր Խորենացի անշուշտ ժամանակագրութիւնը խանգարելով, և Արամի, Արտաշէսի և Տիգրան Ա.ի առասպելական դիմանկարներուն վերագրելով դրուագ-ները, — որոնք անշուշտ կ'երգուէին երգիչներէն, — այն վեց արշա-ւանքներուն որ Տիգրան Մեծ կատարած էր դէպի Կապադովկիա, վասնզի միայն ան, ինչպէս աշխարհակալ կոչումին արժանի միակ Հայոց թագաւորն էր որ Հայաստանի սահմաններէն դուրս իր ըրած ոստումներուն մէջ, նուաճած էր նաև Կապադովկիան։

Արդարև Տիգրան Ծոփքը նուաճելէ յետոյ գրաւեց Կապադովկիան ի հաշիւ Միհրդատի, (Ռէյնախ) ինչպէս նաև առաւ հիւսիսային Մի-ջագետքի երկու ծաղկեալ գաւառները՝ Միգդոնիան և Ուռհայաստանը Պարթեւներէն (Ստրաբոն, ԺԱ. 14. 15) և իրեն հպատակեցուց Մարաց, Աղուանից, Վրաց, Կորդուաց և Ատրպատենիոյ թագաւորները (Ռէյ-նախ)։ Սակայն չկրցաւ ո՛չ նուաճել և ո՛չ ալ իրեն հպատակեցնել

Փոքր Հայքի թագաւորը որ հպատակած էր Միհրդատ Պոնտացիին, այնպէս որ Հայաստանի սահմանը Կապադովկիոյ և Փոքր Հայքի կողմէն միայն Եփրատը (Լէօ, Պատմութիւն Հայոց, էջ 395)։ Տիրեց նաեւ Աստրւոց (83 Քր.է առաջ) և Անտիոքի մէջ իր կողմէն սատրապ մը նշանակեց և յետոյ գրաւեց Կիլիկիան (Րէյնախ)։

Որչափ ատեն որ Դաշտային Կիլիկիա և Կոմմագենէ Տիգրանի ձեռքն էին վտանգի մէջ էին Հռոմի ասիական նահանգները և հովանաւորեալ Կապադովկիան, որ արդարեւ վեց անգամ Տիգրանի բանակներէն կոխոտուեցաւ։

Փաւստոսի և Խորենացիի ակնարկութիւնները հետեւաբար բոլորովին անգոյ և մտացածին չէին և ոչ ալ զուրկ պատմական հիմէ։

Այս իրողութիւնը, որ Հայ ցեղը յարաբերութեան կը գնէր Փոքր Ասիոյ կեդրոնին հետ, ինչպէս նաեւ այն ցեղային նուաճումը որ Հայերը բրած էին Կապադովկիոյ Եփրատամերձ մէկ մասը (Փոքր Հայք) հայացնելով, կարծեմ թէ բաւականէն աւելի պերճախօսօրէն կուգան հաստատել թէ Հայերը բովանդակ Կապադովկիոյ մէջ տարածուած էին այդ շրջանին։

Աւելորդ անխուսափելի էր, մանաւանդ երբ աչքի առջեւ ունենանք սա իրողութիւնը թէ Հայերը առեւտրական ընդարձակ յարաբերութիւններ ունէին բոլոր Փոքր Ասիոյ հետ. և այս պատճառով երթեւեկ շատ մը երկիրներու հետ որոնց մերձաւորագոյններն էին Կապադովկիա և Պոնտոս։

Հայ վաճառականներ իրենց վաճառքը կարաւաններով կը փոխադրէին գլխաւորապէս դէպի Կապադովկիա (Արեւմուտքի համար) և դէպի Պոնտոս (Հիւսիսի համար)։

Հայ վաճառականներու արտածած նիւթերն էին ձիեր, ջորիներ, մետաղներ, որդան կարմիր, ցորեն. գինի, ձէթ (Վալերի Բրուսով, ԲՁՄՊ. 1930, էջ 410)։

Ցետոյ պէտք չէ մոռնալ թէ Հայաստան քաղաքականապէս յարաբերութեան մտած էր Հռոմի հետ Քր.է առաջ 190էն սկսեալ, և 66ին Պոմպէոսի և Տիգրանի միջեւ կնքուած դաշինքով նոյնիսկ կերպով մը անոր ազդեցութեան շրջանակին մէջ մտած էր, քանի որ այնուհետեւ Հայոց թագաւորներ իրենց գահակալութեան համար Հռոմի հաճութիւնը պիտի սպասէին, և այս պատճառաւ իսկ Հռոմ խառնուիլ սկսած էր Հայաստանի գործերուն, հոն ունենալով իր բարեկամները և թշնամիները։

Այս յարաբերութիւններու բերմամբ Հռոմ քաղաքէն սկսեալ պետութեան շատ մը քաղաքներուն մէջ Հայեր գտնուած են, իբր վաճառական, պատուիրակ, ուսանող, զինուոր, պատանդ, փախստական եւայլն։

Եւ երբ հեռուները Հայեր կային, մօտաւոր Կապադովկիոյ մէջ անշուշտ շատ աւելի մեծ էր անոնց թիւը, մանաւանդ անոր արեւելեան կողմերը, Հայաստանի Եկեղեաց գաւառին դրացի՝ Եփրատի աղբերակներուն մերձակայ երկիրները, ինչպէս Սատաղ, Կողոնիա, Նիկոպոլիս քաղաքներուն շուրջը տարածուած հողերը, որոնք առին Փոքր Հայք անունը։

Սակայն երբեք հիմ չունի այն գրոյցը, որուն արձագանգ կ՚ըլլայ Խորենացի, մինչեւ Արամի շրջանը բարձրացնելով Կեսարիոյ շրջանին «Առաջին Հայք» կոչումը, ինչպէս յետոյ պիտի տեսնուի։





Կեսարիա կամ Արգէոսի մօտաւոր շրջանակները անկարելի էր որ այդ ատենները իբր հայաբնակ և հայաշատ վայրեր ստանային հայկական անուններ, երբ դեռ գոյութիւն ունէր հոն Կապադովկիոյ թագաւորութիւնը՝ թող ըլլայ հպատակ կամ հովանաւորեալ Հռոմի հասարակապետութեան։

Կեսարիա պիտի մնէր հայաբնակ երկիրներու ծիրին մէջ այն ատեն երբ Կապադովկիա պատմութենէն պիտի ջնջուէր և Կապադովկիացի ազգը՝ Քրիստոնէական կրօնին և Յունական դաստիարակութեան շնորհիւ պիտի համաձուլուէր Բիւզանդական արուեստական ազգին մէջ։

Մինչեւ Կապադովկիոյ Հռոմէական նահանգի մը վերածման թուականը (17 Քր.է յետոյ) միայն երկրին արեւելեան մասը, Եփրատի արեւմտեան կողմը, Ալիսի և Գայլ գետերու հովիտները, մինչեւ Եփրատ, հազիւ հայացած էին, և Կապադովկիոյ միւս մասերը դեռ կը պահէին իրենց սեփական նկարագիրը և ոչ-Հայ ստուար թուով բնակչութիւնը, սակայն ունենալով գէթ սակաւ թուով Հայ գաղթականներ։



Ե.

# ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ՀՌՈՄԷԱԿԱՆ ՆԱՀԱՆԳ

**(17 — 398)**

---

Կապադովկիա Հռոմէական նահանգի վերածուելէն յետոյ ինչպէս իր ճակատագիրը նոյնպէս նաև իր պատմութիւնը, կը լծորդուի Հռոմէական հզօր կայսրութեան, որ կը ներկայացնէ այդ օրերուն քաղաքակիրթ աշխարհը։

Կապադովկիոյ կցումը պարզապէս վարչածեւի փոփոխութիւն մըն էր կամ Հռոմի կողմէ անուանուած կուսակալին՝ որ երբեմն «թագաւոր» պիտակ անունը կը կրէր, այդ տիտղոսէն մերկանալն էր, ինչ որ շատ արմատական փոփոխութիւն մը չէր բերեր երկրին վրայ, որ Հռոմէական երկիրներու մաս նկատուիլ սկսած էր։

Ասով հանդերձ Հռոմի տիրապետութեան ենթարկուիլը այս երկրին, իր բախտին համար ունեցած է ճակատագրական հանգամանք մը, վասնզի իր պատմութեան ամէնէն կարեւոր անկիւնադարձը կը կազմէ ան, ո՛չ միայն իբր վախճանը իր անկախութեան այլ նաև իբր սկիզբը իր բնակչութեան՝ իբր ազգ տարրալուծումին և անէացման, Հռոմէական և Բիւզանդական գերազանց քաղաքակրթութիւններուն ազդեցութեամբ։

Ուստի կ'արժէ այս հանգրուանին վրայ կանգ առնել և ներկայաց-

նել երկիրը ինչպէս որ էր, աւելի որոշ ու պայծառ դարձնելու համար
Հռոմէական տիրապետութեան հետեւանքները այս երկրին վրայ։
Բարեբախտութիւն մըն է որ երկրին Հռոմէական կայսրութեան
կցումի օրերուն վիճակը գիրի առնող Նշանաւոր աշխարհագիր մը
գտնուած է, որ մեզի կուտայ շատ թանկագին տեղեկութիւններ։
Հետեւաբար իր գրածները իբր վստահելի ծանօթութիւններ կը
ներկայացնեն մեծ արժէք և ունին մասնաւոր շահեկանութիւն։

## Ա.

## ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՄԱՍԻՆ ՍՏՐԱԲՈՆԻ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

լաւագոյն ներկայացնողն է Ստրա-
Երկրին կցումի օրերու վիճակը
բոն յոյն Նշանաւոր աշխարհագիրը, որ ծնած է Հին Կապադովկիոյ
Ամասիա քաղաքը Քր.է առաջ 63ին և մեռած՝ Քր.է յետոյ 19ին։
Ստրաբոն աշակերտ քերականագէտներու և իմաստասէրներու
լաւագոյն դպրոցներուն, այցելած էր Հռոմէական պետութեան մե-
ծագոյն մասը, երկար ատեն կանգ առնելով Հռոմ և Աղեքսանդրիա։
Հասուն տարիքի մէջ խմբագրած է 43 գիրք Պատմական յիշատակներ
(այսօր կորսուած) որոնք շարունակութիւնն էին Պոլիբիոսի (205-145
Քր.է առաջ) պատմութեան, սկսելով Կորնթոսի և Կարքեդոնի աւերու-
մէն (146 Քր.է առաջ) մինչև Կեսարի մահը կամ Ակտիոնի պատերազմը։
Սակայն իր ամենէն կարեւոր և շահեկան գործն է Աշխարհագրու-
թիւնը, որուն մեծ մասը մեզի հասած է։ Յոյն-Հռոմէական աշխարհին
մէջ մշակուած մարդու մը թռիչքով և փիլիսոփայական գաղափար-
ներով ներշնչուած և իրմէն առաջ ապրող աշխարհագիրներու (ինչ-
պէս Երատոսթենէսի և Հիփփարքոսի) և պատմագիրներու (ինչպէս
Եփորիոսի, Պոլիբիոսի և Պոսիդոնիոսի) գործերէն օգտուելով իր խմբա-
գրած Աշխարհագրութիւնը կ'ստանայ պատմական որոշ արժէք մը, ի վեր
հանելով մարդոց, ժողովուրդներու և կայսրերու յարաբերութիւնները
ֆիզիքական աշխարհին հետ և ասով անհամեմատ աւելի բարձր կը
կանգնի Պտղոմէոսի անուններու հաւաքումէն, որ հնագոյն աշխար-
հագրական աշխատութիւնը նկատուած է։
Ստրաբոն, Միջին դարուն պէտք եղածին պէս ճանչուած չէր։
ԺԶ. դարէն յետոյ է որ իր կարեւորութիւնը ըմբռնուեցաւ և շատ լե-
զուներու թարգմանուեցաւ։
Ռամսէյ որ Փոքր Ասիոյ Նոր Ստրաբոնը կոչուած է, անոր Փոքր
Ասիոյ նկարագրութեան վրայ խօսելով կ'ըսէ թէ «իմ ընդհանուր տպաւո-
րութիւնն է՝ թէ իր համառօտ նկարագրութիւնները հրաշալիօրէն ճշգրիտ են եւ
ականատեսի մը համար՝ արտակարգ կերպով պայծառ»:
Այս աշխարհագրական տեղեկութիւնները որոնք Ստրաբոն կու-
տայ իր հայրենիքի մասին ճիշդ Հռոմէական տիրապետութեան առա-
ջին օրերուն, խիստ հետաքրքրական են։
Նոյնքան շահագրգռական են Կապադովկիացի աշխարհագիրին
անշուշտ տեղւոյն վրայ հաւաքած պատմական ծանօթութիւնները
որոնք իբրև տեղացիի մը տեղեկութիւնները կը նախընտրեմ նոյնու-
թեամբ մէջ բերել, ծանօթագրութեամբ։



Մասնաւորապէս Ստրաբոնի խօսքերը անոր համար մեծ կշիռ և կարեւորութիւն ունին մեզի համար որ անիկա ո՛չ միայն տեղացի մըն է, ո՛չ միայն երկիրը կը ճանչնայ, ո՛չ միայն կը գրէ դէպքեր որոնց ժամանակակից է և կը նկարագրէ տեղեր որոնք ինքն այցելած ու տեսած է, այլ առաջին աշխարհագիրն է որ Կապադովկիոյ վրայ մասնաւորապէս կը խօսի։

Ահա թէ ինչպէս կը նկարագրէ Ստրաբոն իր հայրենիքին պատմական զարգացումը։

«Մակեդոնացիք որոնք Կապադովկիան պարսիկներէն երկու սատրապու-
«թեան բաժնուած գտան, մասամբ կամաւ մասամբ ակամայ թողուցին որ
«սատրապութիւնները թագաւորութեան փոխուին, որոնց մին բուն Կապադով-
«կիա՝ նաեւ Կապադովկիա Տաւրոսի կամ Մեծ Կապադովկիա՝ կը կոչուէր,
«միւսը՝ Պոնտոս կամ նաեւ Կապադովկիա Պոնտոսի(1): Մեծ Կապադովկիոյ
«արդի բաժանումը չենք գիտեր տակաւին, վասնզի Արքեղայոսի մահուանէն ետքը
«կայսրն (Տիբերիոս) եւ Ծերակոյտը որոշեցին որ Հռոմէական նահանգ մը ըլլայ:
«Արքեղայոսի եւ նախորդաց ժամանակն երկիրը(2) տասն կուսակալութեանց
«բաժնուած էր, որոնց հինգը Տաւրոսի ոտքն կ'իյնան՝ Մելիտինէ(3), Կատաո-
«նիա(4). Կիլիկիա(5), Տիանիտիս(6) եւ Գարսաւրիտիս(7), միւս հինգը՝ Լաւիա-
«սինէ(8), Սարգաւրաւենէ(9), Սարաւինէ(10), Քամանենէ(11), Մորիմենէ(12): Ար-

---

(1) Ինչպէս այլուր ըսինք, անգամ մը (էջ 132) բրօֆ. Մարկուարտ նոյն տողերը կը հերքէ ըսելով թէ «Ստրաբոնի ըսածը թէ Կապադովկիան երկու սատրապութեան բաժնած էին Պարսիկները, ընդունելի է այնչափ՝ որ ուշ ժամանակի Կապադովկիան բաղադրուած էր «Կապադովկիա» նահանգին և Կիլիկիոյ թագաւորութեան մասերէն»։

(2) Ռամսէյ Ստրաբոնի այս բաժանման կը հետեւի՝ հակառակ Պտղոմէոսի և Քիբերտի (էջ 283)։

(3) Կը համապատասխանէ արդի Մալաթիոյ շրջանակին։

(4) Կատաւոնիա կամ Կատաոնիա ըստ Անտրէաս վրդ. Ալէքսանդրեանի (Պատմ. Սեբաստիոյ) կը համապատասխանէ այսօրուան Կէօքսունի, Հաճընի և Զէյթունի շրջանակներուն։

(5) Ըստ Ռամսէյի Մաժակի շրջակայքը կը ներկայացնէ Կիլիկիան։

(6) Տիանա՝ Տաւրոսի ստորոտը և հարաւակողմը Կիլիկիոյ։

(7) Գարսաւրիտիս, Թուզլու Կէօլ լիճին արեւելեան հարաւային կողմը, Աքսարայի շուրջը։

(8) Լաւիասինէ կամ Լաւիալիզինէ (ըստ Ալէքսանդրեան վրդ.ի) կը գրաւէր արդի Կիւրինի, Թոնուզի, Ազիզիյէի շրջանները։

(9) Սարգարաւենէ կամ Սարկարաւենէ կը համապատասխանէ արդի Նէաշէհիրի ըստ Ալէքսանդրեան վրդ.ի (տես, Պատմ. Սեբաստիոյ) իսկ Ռամսէյ զայն կը դնէ Ծամնդաւի շուրջը Մելիտինէի և Կեսարիոյ միջեւ։

(10) Սարաւենէ որ Հ. Ալէքսանդրեան Արաւսինէ կը կարդայ և կը դնէ արդի Քեահթայի շրջանակին մէջ։

(11) Քամանենէ որ Հ. Ալէքսանդրեան Կամեսինէ կը կարդայ և կը դնէ համապատասխան այսօրուան Տիվրիկի և Զառայի շրջանին իսկ Ռամսէյ Զառայի շուրջը։

(12) Մորիմենէ, կը համապատասխանէ արդի Ագտաղ Մատէնի շըր-ջանակին (տես, Պատմութիւն Սեբաստիոյ)։

«քեղայոսէն առաջ եղող թագաւորներու երկրին վրայ աւելցուցին Հռոմայեցիք «մեծամասներորդ կուսակալութիւն մըն ալ, Կիլիկիոյ մասն՝ Կաստաբալայի(1) «եւ Կիւբիստրայի(2) շրջակայքն մինչեւ Դերբէ(3), որ Անտիպատեր աւազակին «կը վերաբերէր:

«Իսկ Արքեղայոսի տունն նաեւ յեռնոս Կիլիկիան Էլեւսայի (Eläusa *կամ* «Elaioussa) շրջակայքն եւ ծովափնեններու բոլոր տեղերը: Անտիտաւրոսի մէջ կան «խորունկ եւ նեղ հովիտներ, որոնց մէջ կ'իյնան նաեւ Կոմանա(4) եւ Ենիւոյի «(Enyo) մեհեանը, զոր *Մայի*(5) մեհեան կ'անուանեն: Քաղաքը բաւական մեծ «է: Բայց բնակիչներու մեծագոյն մասն են ոգեւորեալքն եւ մեհեանին սպասա- «ւորները: Բնակիչները Կապադովկացիք են, եւ թէեւ արքային ներքեւ են, սակայն «աւելի քրմապետին կը հնազանդին: Ասիկա տէրն է մեհեանին եւ մեհենասպասնե- «րուն, որոնք իմ ներկայութեանս ժամանակ 6000էն աւելի էին, այր եւ կին: «Մեհեանին շրջակայքը շատ հողեր կան, որոնց եկամուտները քրմապետը կ'առնէ. «ասիկա Կապադովկացւոց քով թագաւորէն վերջը երկրորդն է. մեծ մասամբ «միեւնոյն տոհմէն էին թագաւորներն ու քուրմերը: Արտեմիսի Տաւրոպոլոսի «(Artemis Tauropolos) պաշտօնը կ'երեւայ թէ Տաւրեան Սկիւթիայէն հոս բերած «է Որեստէս իր Իփիգենիա քրոջ հետ: Անիկա հոս իր սուգի *հերը* (κόμη) թողուցած «կ'ըսուի, որով քաղաքը իր անունը առած է: Այս քաղաքէն կ'անցնի Սարոս(6) «գետը որ Տաւրոսի կիրճերէն դէպի Կիլիկիոյ դաշտավայրերը կը կտրէ կ'անցնի եւ «մերձակայ ծով կը թափուի: Երրորդ աստիճանն ունին(7) Արամազդայ՝ որ *Բա-*

---

(1) *Կաստաբալա՝ արդի Ամբարարասի:*

(2) *Կիւբիստրա՝ արդի Էրէկլին է:*

(3) *Դերբէ՝ Գարամանի մօտերը քաղաք մը* (*Տես* The Historical Geography of Asia Minor *էջ* 336–337)*: Քաղաքը շինուած էր Տիբերիոս կայսրէն: Ըստ* Prof. J. R. S. Sterrett*ի* (*որուն համաձայն է նաեւ Ռամսէյ*) *այժմ կը կոչուի* Zosta (*Նոյն էջ* 336)*:*

(4) *Կոմանա՝ անշուշտ պէտք է հասկնալ հոս Կոմանա Կապադովկիոյ որ կը համապատասխանէ արդի Շէհիր Տէրէսի* (*Հաճընի մօտ*) *մինչ կայ Կոմանա մը եւս որ կը գտնուի Պոնտոս և կը համապատասխանէ Կոմէնէկի:*

(5) *Այսպէս կը կարդայ* Zimmerer՝ *Կրամերի, Գրոսկիրդի և Լեւիտոսի հետ, որ* Μήν Φαρνάκου, *դիցուհւոյն Մա* (Mã) Անահիտի (Αναϊτύς) *բազմաթիւ գլուխներ նուիրուած է:*

(6) *Արդի* Սէյհուն:

(7) *Հոս թերոյթ մը* (*ինչպէս Գրոսկուրդ կ'ուզէ*) *չեմ կրնար գտնել, կ'ըսէ* Zimmerer *և ոչ ալ դժուարութիւն մը, երբ Ստրաբոնի խօսքերուն ճշդիւ հետեւելով կը հաշուենք պատուոյ առաջին աստիճանը՝ թագաւորին, երկրորդը՝ Կոմանայի քրմապետին, երրորդ Արամազդայ Բագէոսի քուրմին: Ցանդուգն կ'երեւայ ենթադրութիւննիս «Բագայոս»* (Βαγοῖη) *փոխանակ «Դակիէ»ի* (Δακίη)*: «Բագա»* (Baga) *հին պարսկերէն բառ մըն է Աստուծոյ նշանակութեամբ* (*տես Ռամսէյ՝* 347) *Փռիւգերէնի մէջ Զեւս* Բագայոս (Zeus Bagaîos) *կը կոչուի Փռիւգական դիքն երկնից, զոր յոյները նոյնացուցած են Զեւսի հետ, զոր կը պատուէին մերթ իբր* Փռիւգական *Զեւս* (Φρύγιος), *մերթ իբր* Զեւս Բագէոս (Βάγαῖος)*: Առաջինը՝ առ Հեսիքիոսի* (μάταιος, μέγας, πολὺς' ταχὺς *յորջորջանօք*) *Ահրէնս* (Dial. 2 p. 567) *կը համեմատէ* Մազեւսի (Μάζεύς) *հետ, որուն կողմը կրնայ խօսիլ անմիջապէս յաջորդող մեկնաբանութիւնը* ΒΑΓΟΣ



«*գայոս* կը կոչուի, մեհեանին քրմապետը, ոչ նուազ քան միւսը եւ նոյնպէս «նշանաւոր: Հոս լճակ մը կայ աղի ջուրի, տարածութեամբը մեծ ցամաքային «լիճի մը չափ, շրջապատուած բարձր, սեպ ափերով, այնպէս որ սանդուխնե- «րով վար կ'իջեցուի, կ'ըսուի թէ ջուրն ո՛չ կ'աւելնայ եւ ո՛չ ալ տեսանելի ելք «մը ունի(1): Սակայն քաղաք մը չունի՝ ո՛չ Կատաւոնիայի դաշտավայրն եւ ո՛չ «Մելիտինէ, բայց միայն ամուր բերդեր լեռներուն վրայ՝ Ազամորա եւ Դաստար- «կում, զոր կը պատէ Կարմալոս գետը(2): Կայ նաեւ Կատաւոնեան Ապողոնի «մեհեանը, որ մեծայարգ է բոլոր Կատաւոնիոյ մէջ եւ զոր օրինակ առած են: «Նոյնպէս միւս կուսակալութիւնները քաղաքներ չունին, բացի երկուքէն: Սար- «գարաւսենէ նահանգին մէջն է Հերպա քաղաքիկը եւ Կարմալոս գետը՝ որ նոյն- «պէս դէպի Կիլիկիա կը հոսի(3): Ուրիշ կուսակալութեան մը մէջն է Արգոս, «ամրոց մը Տաւրոսի վրայ, եւ Նորա՝ այժմ Ներուասոս (Neroassus), ուր Եւ- «մենէս դիմադրեց երկար պաշարման մը(4): Նորագոյն ժամանակս հոն կը պա- «հէր իր գանձերը Սիսինէս որ Կապադովկիոյ իշխանութեան վրայ դիտումներ «ունէր: Իրենն էր նաեւ Կադենա՝ իր աթոռանիստն որ քաղաքի մը տեսքն «ունի(5):

---

κλάσμα ἄρτου... μάζης (*ԲԱԳՈՍ պատառ հացի ... խմորոյ*)*: Հմմտ. Նաեւ Լիւդական քաղաքի անունը* Բագայ *կամ* Բագիս (Βαγαι) *կամ* (Βαγις)*: Վերջինը կը յիշէ* Anon. Amros. 22 Laur. 1. 18 (=Schoell–Studemund, Anecdota, II. 265–6)*: Արմատը նոյն է Սանսկրիտերէն* bhagas, *Պարսկ.* baga, *Սլաւերէն* bogu (=*տէր*, բազ) *բառին հետ:* Բազիս (Bazis) *զոր Պտղոմէոս կը յիշէ, կ'իյնայ Տիանիտիս գաւառին մէջ, և Տիանայի մօտ* Ասմաբայոս (Asmabaios,) *կամ* Ասմամայոս՝ *առ Փիլոստր. «Վարք Ապող.» Ա. 4 և Ամմիանոս ԻԳ. 6.*) *Արամազդայ Նիստն էր:* (*ՀԱ.* 1900 *էջ* 113)*:*

(1) *«Այս կողման այս աղտաղտին բխող ջրով լճակին գոյութիւնը հաստատեց մեզի* Faoul *անուն անձն ի Թալաս, և Վիլսոն ընդարձակօրէն նկարագրած է.* (Wilson. Murray's Asia Minor. 1895 *էջ* 160)» *ծան.* Zimmerer*ի ՀԱ.* 1900 *էջ* 113*:*

(2) *Ազամորայի դիրքը տարակուսական կը մնայ Կատաւոնիայի և Մելիտենէի մէջ, իսկ Դաստարկումը կը փնտռէ Ռամսէյ՝ Սամանտի-Սուի վրայ Էկրեկի մօտերը* (*Նոյն ՀԱ.* 1900 *էջ* 113)*:*

(3) *Ռամսէյ Հերպան կը դնէ Կեսարիայէն դէպի Մելիտենէ տանող ճամբուն վրայ և Կարմալոս գետը կը համարի Սամանտի-սուն* (*Նոյն*)*:*

(4) *Նորային մէջ Եւմէնէսի երկար պաշարումին վրայ խօսուեցաւ Մակեդոնական շրջանին պատմութեան ընթացքին* (*տես էջ* 163)*:*

(5) *Ռամսէյ՝ Կադենան կը դնէ արեւմտեան սահմանը Քամամենէի, նոյնպէս Նորա և Արգոս, զոյգ մը ամրոցներ: Նորա՝ Արգոսէն աւելի դէպի հիւսիս՝ Էքէճիկտաղի զառիթափներուն վրա, կամ Հասան-Տաղի վրայ Հելվա-տէրէի քով: Անուններու կրկնաձեւութիւնը կը ցուցընէ յաճախ հին Կապադովկեան բառի մը յունացումը: Քաղաքներու պակսելէն կրնայ գուշակուիլ որ արդէն այնատեն քարայրները յաճախ կը գործածուէին բնակութեան* (*Տես Հ. Ա.* 1900 *էջ* 114)*: Նաեւ յետոյ շատ քիչ քաղաքներ կը յիշուին: Հերոկղիս Սիւնեկդեմոս* (*էջ* 396) *կը գրէ.*

*«ԼԶ. Գաւառ Կապադովկիոյ Ա. ... քաղաքք Դ, Կեսարիա, Նիսա, «Թերմք* (τὰ Θέρμα), *Հռեգեպոտանդոս:*

*«ԼԷ. Գաւառ Կապադովկիոյ Բ. ... քաղաքք Ը. Տիանա* (Τιάνα),

«Լիկաւոնեան սահմանին վրայ կ'իյնայ, Գարսաւրա որ գիւղաննման քա-«ղաք մըն է(1) որ սակայն երկրին մայրաքաղաքն եղած ըլլալու է երբեմն(2): «Մորիմենէ կը զատուի Վենասայի(3) Զեւսի մեհեանը, գիւղով մը որ 3000 մե-«հենասպասիկ ունի եւ շատ արգասաւոր շրջակայքով' որ քուրմին տարեկան 15 «տաղանդ(4) կը բերէ: Այս ալ ցկեանս քուրմ է, ինչպէս Կոմանայինը, եւ անկէ «ետքն երկրորդ տեղն ունի(5): Միայն երկու կուսակալութիւններ քաղաքներ «ունին, այսինքն Տիանիտիս' Տիանա (Tyana), Տաւրոսի ստքը Կիլիկեան կիրճե-«րուն մօտ, ուրկէ է դիւրագոյն եւ սովորական անցքը դէպի Կիլիկիա եւ Ասո-«րիք: Գաւառս կը կոչուի նաեւ Եւսեբիա Տաւրոսի, բարեբեր է եւ մեծաւ մա-«սամբ հարթ: Տիանա Շամիրամայ թումբին վրայ կ'իյնայ եւ լաւ ամրաց-«ւած է(6):

---

*Փաւստենուպոլիս, Կիւբիստրա, Սասիմա, Պառնասոս, Նազիազոս, Հռեգեմուկիսոս (տես* Corp. script. hist. byz. ed. Niebuhr. vol. XIII. *Կոստ. Ծիրանածին տպ. Պոնն.* 1840 (*ՀԱ.* 1900 *էջ* 114):

(1) *Այսօր ալ Յոյները Կապադովկիոյ բոլոր քաղաքները կ'անուանեն* Κωμοπόλεις (*Գիւղաքաղաքներ*) (*Ծան.* Zimmerer*ի ՀԱ.* 1900 *էջ* 114):

(2) *Գարսաւրա հին անունն է Արքեղայիսի* (Archelaès) *որ է արդի* Աքսէրայ, *ինչպէս Ռամսէյ համոզիչ կերպով ցոյց տուած է* (*էջ* 284):

(3) *Վենասա* (Venasa) *Ռամսէյի հաւանեցուցիչ պատմուածքին համեմատ թէ ապստամբ Գլիւզերոս Ս. Բարսեղի բարկութեան երեսէն փախաւ Վենասայէն ի Նազիանզոս, կը համարուի Մելեգոբի դաշտավայրը, ուր ի Հասանքէօյ և Տիրկան* (Τροχὸς *և* Ναξός) *շատ մը քարայրներ գտանք,* (*Ծան.* Zimmerer *ՀԱ.* 1900 *էջ* 114):

(4) *Ոսկեդրամ* 50,000 *մարք իբր:*

(5) *Ուստի, ըստ* Zimmerer*ի մեկնութեան* (*Թագաւորէն յետոյ երրորդ*) *այն աստիճանն ունէր' զոր ունէր Տիանայի քրմապետը:*

(6) Zimmerer, *կ'ըսէ թէ ինքն ալ ճիշդ այս ճամբով Տաւրոսի վրայէն կուգայ Նիկտէ' որ արդի գաւառական քաղաքն է և կրցած է հաստատել դաշտավայրին բարեբերութիւնը: «Կիս» կամ «Կիլիսէ Հիսար» տեղը կը ցուցընէ երբեմն այնպէս մեծ Տիանայի աւերակները, որուն տեղն անցած է այժմ Նիկտէ: Քսենոփոն* Դանա *կ'անուանէ, յետոյ կոչուեցաւ'* Եւսեբիա *և* Կողոնիա Անտոնինա: *Պայծառ չէ այնպէս թէ ի՛նչ կ'ուզէ ըսել Ստրաբոն «Շամիրամայ թումբ» անուամբ. սակայն կը յիշեմ որ երբ Կիլիսէ-Հիսարէն ելանք' ձախ թեւին վրայ տեսանք թմբաձեւ մեծ բարձրութիւն մը, որուն վրայ ըլլալու էին հին Տիանայի աւերակները: Բաց աստի նոյն Ստրաբոն կը մեկնէ Շամիրամայ թումբին տեղը իր ԺԶ. գրքին մէջ' «Նինոս և Շամիրամ իշխեցին բոլոր Ասիոյ, և Շամիրամէն կը ցուցընեն' բաց ի անոր շինութիւններէն ի Բաբելոն շատ ուրիշներ ալ, գրեթէ ամբողջ աշխարհիս վրայ' որչափ այս աշխարհամասին կը վերաբերի, ո՛չ միայն Շամիրամայ անուն կրող բլուրներն ու թումբերը, այլ նաև ամբողջ բերդերու շինութիւնները ու անոնց մէջ գետնափորներ, ջրուղիներ, լեռնասանդուխներ, գետեր և ծովեր կցող ջրանցքներ, վերջապէս պողոտաներ և կամուրջներ»:*

*Ակնարկուածն են Շամիրամայ անուամբ այն կուտածոներով լեցուած բլուրներն* (*ԺԲ. է.* 7 *և գ.* 37. *ԺԲ. Ժը.* 4) *որոնց վրայ նստած*



«Շատ հեռու չեն Կաստաբալա եւ Կիւբիստրա քաղաքիկները, լեռներու «աւելի մօտ: Կաստաբալայի մէջն է Արտեմիս *Պերասիա* (Artemis Perasia) «դիցուհիին մեհեանը, ուրուն քրմուհիները կ'ըսուի թէ բոկոտն հրաւէկ ա-«ծուխի վրայէն կը քալեն, եւ ոմանք հոս կը դնեն Օրեստէսի եւ Տաւրոպոլոս «Դիանայի պատմութիւնը: *Պերասիա* այսինքն' Յայնկոյս կոչուած է, վասնզի «միւս կողմէն (πέραθεν) հոս բերուած է եղեր(1):

«Այսպէս կոչուած Կիլիկիոյ մէջ կ'իյնայ *Մաժակ* (Mazaca), երկրին «մայրաքաղաքը: Անիկա նաեւ կը կոչուի Եւսեբիա առ Արգէոսի վերադիրով: «Քաղաքի մը դիրքի համար Մաժակ շատ անյարմարութիւն ունի, վասնզի ջուր «ու ամրութիւններ եւ նոյնիսկ պատուարներ կը պակսին պետութեան անհո-«գութեամբը, որ թերեւս այն դիտումով է որ բնակիչները այս պատուարին' «իբրեւ պատնէշի' վստահելով աւազակութեան չպարապին, մանաւանդ որ կը «բնակին դաշտավայրի մը վրայ որ բարձրադիր եւ նետերու անհաս բլուրներով «ծածկուած է(2):

«Մաժակի շրջակայ երկիրը, այլ եւ այլ կողմանէ անբարեբեր է: Բայց «կ'երեւայ թէ թագաւորները անոր համար ի մասնաւորի իրենց բնակավայրն «ընտրած են, վասնզի երկրին մէջտեղը կ'իյնայ եւ կը մատակարարէ փայտ ու «քար շինութեան համար եւ խոտ' որուն պէտք ունէին յատկապէս անասուն «բուծանելու համար, վասնզի քաղաքը կերպով մը անոնց բանակատեղն էր: «Իրենց ուրիշ ապահովութիւնն էին անձնապահներն' զորոնք կը պահէին բեր-«դերու մէջ, որոնք շատ բազմաթիւ են, եւ մասամբ թագաւորին են' մասամբ «անոր բարեկամներունն»:

*Ասկէ յետոյ Ստրաբոն կը նշանակէ Մաժակի հեռաւորութեան չափերը Պոնտոսէն և Տաւրոսէն և յետոյ կը շարունակէ.*

«Մաժակացիք կ'ապրին Քառոնդասի օրինաց համեմատ, վասնզի օրիներգու «(νομῳδὸν) մը կը պահեն' որ իրենց օրինաց մեկնիչն էր' ինչպէս Հռոմայեց-«ւոց քով իրաւագէտները: Շատ նեղուեցան Հայազգի Տիգրանէն' երբ Կապադով-«կիա արշաւեց, վասնզի զիրենք ամէնքը փոխադրեց Միջագետք եւ Տիգրանա-«կերտի քաղաքը մեծաւ մասամբ իրենցմէ բնակեցուց: Բայց յետոյ' Տիգրանակեր-«տի առնուելէն ետքը' կրցողը դարձաւ»:

*Կապադովկեան բերդերուն մէջ Ստրաբոն կը յիշէ* «Սինոպեան սուռ

---

*են Տիանա և Զելա: Նաեւ Դիոդոր* (*Բ.* 14) *յայտնի կ'ըսէ Շամիրամայ մասին թէ «դաշտերու վրայ հողաբլուրներ* (Χώματα) *կը շինէր և կը կոչէր Շամիրամայ գործք»: Հիմա Արեւելքի մէջ ամէն մեծագոյն շինութիւնք փոխանակ Շամիրամի* նենիվիզ*ներու կը վերագրուին:* (*ՀԱ.* 1900, *էջ* 114):

(1) *Եթէ Կիւբիստրա արդի Էրէկլին է, Կաստաբալան դնելու ենք արդի «Ամբարարասի» տեղը: «Պերասիա» ձեւը, որչափ որ Գրոսկինդ պաշտպանած է, ադաւաղութիւն կը համարուի կամ գոնէ սխալ հասկացում' Կապադովկիոյ մէջ շատ պաշտուած «Արդեմիայ* Պերսիա» (Artemis Περσία) *կամ* Անահտայ *անուան:* (*տես* Preller, Gr. Mythol, I. 256, *ՀԱ.* 1900, *էջ* 114):

(2) *Մաժակ=Կեսարիա մեր մասնաւոր ուշադրութեան առարկան ըլլալով* Zimmerer*ի և Հ. Յակոբոս Տաշեանի նկատողութիւնները Ստրաբոնի այս տեղեկութեանց մասին, մասնաւորապէս պիտի քննըւին, ուստի հոս զանց կ'առնենք:*

«կամ կարմրադեղը (μιλτὸς), որ յաւագոյն է եւ Իբերականին գրեթէ կը հաւա-
«սարի: Սինոպեան կը կոչուի. վասնզի վաճառականները հոն կը տանէին զայն,
«Եփեսացւոց առեւտուրին մինչեւ այս երկիրը տարածուելէն առաջ(1): Գտնուած
«է կ'ըսուին նաեւ, բիւրեղի տախտակներ եւ եղնգնաքար մը Արքեղայոսի բովա-
«գործներէն Գաղատիոյ մօտերը: Գտնուեցաւ նաեւ տեսակ մը ներմակ քար՝ փղոս-
«կրի գոյնով, մեծ յեսանաքարի ձեւով, որմէ դանակի կոթ կը շինեն, բաց աստի
«կան պատուհանի ապակիի մեծ տախտակներ, զորոնք դուրս ալ կը ղրկեն:

«Նաեւ շրջակայ երկիրը (Կեսարիոյ), բոլորովին անպտղաբեր է եւ մշակու-
«թեան անյարմար, վասնզի աւազուտ է եւ ներքեւը ժայռոտ(2): Քաղաքին առ-
«ջեւ, դաշտին մէջ գետ մըն ալ կայ, Մելաս (= Սեւ) անունով(3), իբր 40 ստադ
«հեռու քաղաքէն, որուն աղբիւրն է քաղաքէն աւելի վար տեղ մը: Ուստի քաղա-
«քացւոց համար այն կողմանէ օգտակար չէ եւ ճահիճներ ու լճակներ կը կազ-
«մէ, եւ ամառն օդը կ'ապականէ: Նաեւ քարահանքն անգործածելի կ'ընէ՝ որ-
«չափ ալ օգտակար ըլլար այն, վասնզի քարերու խաւեր կան՝ որոնք Մաժակաց-
«ւոց առատութեամբ կը մատակարարեն տուն շինելու քար, բայց քարի շարքերը
«ջրով ծածկուած են, ուստի չեն կրնար բանեցուիլ: Այս ճահճային տեղերն ալ
«շատ տեղ (ստորերկրեայ) կրակի հետ հաղորդակցութիւն ունին(4):

«Որովհետեւ Մելաս նեղ տեղ մը *Հալիս* կը թափուի, Արքեղայոս թագաւորը
«գոցեց այն տեղն, որով բոլոր շրջակայքն ծովանման լիճ մը դարձաւ(5):
«Եւ որովհետեւ ծովուն մէջ քանի մը կղզիներ կային՝ ինչպէս Կիւկլադները(°),
«անոնց վրայ կը բնակէր թագաւորը եւ երիտասարդական զուարճութեանց կը
«պարապէր: Բայց թումբը բռնութեամբ պատռեցաւ եւ ջուրն իր ելքը գտաւ:
«Անով բարձրացաւ *Հալիս*ը(6) եւ Կապադովկեան հողին մեծ մաս մը հեռը քշեց
«տարաւ, աւրեց գիւղեր եւ մշակեալ դաշտեր եւ Փռիւգական Գաղատիոյ մեծ
«վնասներ բրաւ: Անոր դէմ Գաղատացիք 300 տաղանդ վնասուց հատուցում պա-
«հանջելով առին, իրաւընտրութիւնը Հռոմայեցւոց տալով: Նոյնը պատահեցաւ

(1) *Այս «կարմրադեղին»* (μίλτος) *մեկնութիւնը կը ձգենք գիտուններուն, կ'ըսէ* Zimmerer։ *Կաննէնբէրգ* (Kannenberg, Naturschätze Kleinasiens) *յիշած ալ չէ զայն։ Չենք կրնար որոշել թէ որչափ կապ ունի ասոր հետ Կարմիր գետ (Գըզըլ-ըրմաք) անունը։ Արգէոսի միւս հանքային գանձերն ալ կ'սպասեն տակաւին հանքաբանի մը ուսումնասիրութեան* (ՀԱ. 1900, էջ 115)։

(2) Zimmerer *կ'ըսէ թէ այսօր ալ աւելի բարձր եղէգով քան ցորենի բերքով ծածկուած են արդի տխուր քաղաքին շրջակայքն, որուն արուարձաններն աւելի գիւղի նման են, և որ՝ օրինակի համար՝ Ս. Բարսեղի օրով հին քաղաքին հետ մինչեւ* 400.000 *հոգի բնակիչ ունէր* (ՀԱ. 1900, էջ 116)։

(3) *Հիմա Գարա-Սու կամ Սարմըսագլը։*

(4) *Մելաս գետին մասին Ստրաբոնի պատմածն այնպէս իմանալու է թէ Արքեղայոս արքայի շինած թումբը կրնայ ըլլալ միայն այն կիրճին մէջ, ուր նոյն գետը Կարմիր գետ կը թափուի* (Zimmerer. ՀԱ. էջ 116)։

(5) *Այսօր ալ Կեսարիոյ շրջակայքն ու Արգէոսի ոտքը կը տարածուին մեծ լճակներ և ճահիճներ, որոնցմէ են Գարասու կամ Սարմըսագլը գետերու ջուրերը։* (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 116)։

(6) *Բնագրին մէջ երկու անգամ ալ սխալմամբ գրուած է* Եփրատ *փոխանակ* Հալիսի (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 116)։



«Հերպայի(1) քով ալ: Վասնզի հոս ալ Կարմալաս(2) գետին ընթացքը փակեց,
«բայց գետը պատռեց անցաւ եւ իր ջուրն աւերեց քանի մը Կիլիկեան տեղեր
«Մալլոսի քով, եւ ստիպուեցաւ վնասուողներուն հատուցում ընել:

«Քիչ մը անդին կուգանք դաշտ մը՝ որ բազմաթիւ ստադներու մեծութեամբ
«եւ հրացայտ է, լի անդունդներով՝ որոնցմէ բոցեր դուրս կը ցայտեն, այնպէս
«որ ապրելու պարէնը շատ հեռուէն բերելու է: Ուստի օգտակար երեւցածը կապ-
«ւած է վտանգի հետ, վասնզի՝ երբ բովանդակ Կապադովկիա անփայտ է, Արգէոս
«պատուած է անտառներով, այնպէս որ շատ մօտ է փայտը, բայց այն տեղերը՝ որ
«անտառին մերձակայ են, շատ տեղեր կրակ ունին: Նաեւ պաղ ջուր կայ գետ-
«նին տակը: Բայց ո՛չ կրակն եւ ոչ ջուրը գետնին երեւան են, այլ մեծ մասամբ
«թաղուած, գետինը տեղ տեղ ճահճային ալ է, եւ գիշերը բոցեր կ'ելլեն անկէ:
«Գիտցողները փայտ կ'առնեն կը բերեն զգուշութեամբ, բայց շատերուն համար
«վտանգաւոր է. մանաւանդ զրաստներու, վասնզի յաճախ հրալից պատռուածք-
«ներու մէջ կ'իյնան(3)»:

*Ստրաբոն կը վկայէ որ տակաւին իր ժամանակը երկիրը լեցուն էր աւերակներով և ամայացած դաշտերով, որոնք երկարատեւ մեծ պատերազմին արդիւնքն էին։*

*Անով հանդերձ պատմագիրները պահած են յիշատակը այն հիացման, զոր ունեցան հռոմէական զինուորները երբ 72ին (Քր.է առաջ) գաղատական անջրդի տափաստանէն մտան Պոնտոսի դալարագեղ դաշտավայրերը, ուր գիւղ գիւղի քով կեցած էր և ուր արջառներ, գերիներ ու զգեստներ այնպիսի առատութեամբ կը գտնուէին որ լեգէոններու չափազանց ուրախ զինուորները իրենց աւարը չէին այլեւս*

(1) *Ռամսէյ Հերպայի մասին իր կարծիքը կազմած է Կարմալաս գետը՝ որուն վրայ կ'իյնար Հերպա, նոյն համարելով Սամանտի-Սու գետին հետ։ Ռուգէ* (Ruge) *ճիշդ Ստրաբոնի տուած այս տեղեկութեան համար՝ զոր Ռամսէյ ի նպաստ իրեն յառաջ կը բերէ, անհնար կը համարի այն կարծիքը։ Վասնզի երբ Ստրաբոն (ԺԲ. 539) կը պատմէ թէ Կարմալաս թումբերը պատռելով աւերեց «Կիլիկեցւոց քանի մը տեղերը Մալլոսի քով» չենք կրնար Կարմալասը փնտռել Սամանտի կամ Սէյհունի գետին կողմերը, այլ Ջիհան գետին, վասնզի վերջնոյս խառնուրդի վրան էր Մալլոս* (Mallus 'ի Pyramus' *է արդի Գարատաշ), անոր արեւմտեան՝ այժմ ցամաք՝ խառնուրդի բազուկին վրայ։ Այս գետին կողմերը Քուրման-Սու գետ մը գտնելով, ինքնին կուգայ այն գաղափարը՝ անուններու նմանահնչութեան համար՝ նոյնացնել վերջինս Կարմալասի հետ։ Ցամենայն դէպս Հերպա գետին արեւելեան կողմն էր։ Ռուգէ Կարմալասը կը համարի Քուրման-Սու գետը, իսկ Կորաա* (Koraa) *անունը կուտայ անոր ճիւղին՝ Մարագուշայի* (ՀԱ. 1900 էջ 116)։

(2) *Հիմա Սամանտի-սու։*

(3) *Այս տողերը ցոյց կուտան թէ Ստրաբոնի ատեն Արգէոս տակաւին գործօն հրաբուխ մըն էր։ Փոքր Ասիոյ միակ հրաբուխն է որ մինչեւ պատմական ժամանակները գործօն մնացած է։ Բովանդակ Միջերկրականի շրջանին ամենաբարձր լեռն է և իր ժայթքման նիւթերուն մեծութեան և առատութեան կողմանէ միայն Եթնայի հետ կրնայ համեմատուիլ։* (ՀԱ. 1900, էջ 129)։

*վաճառեր (տես Ապպիանոս՝* «Միհրդատ» 72, *Պլուտարքոս՝* «Լուկուլլոս» 14)։ *Ձին կը բուծուէր գրեթէ ամէն կողմ՝ ինչպէս այսօր ալ, բայց գլխաւորաբար Փոքր Հայոց բարձրագաւառը. բաց աստի պոնտական ձիեւորաբար ... ցեղը Նուազ յարգի էր կապադովկեան ցեղէն։ Նոյնը կը պատմեն բու ցեղը Նուազ յարգի էր կապադովկեան ցեղէն։*

*Կապադովկիացւոց մասին տեսութեան և գնահատման նոյն տարբերութիւնը կը տեսնենք նաեւ Քրիստոնէութեան ժամանակ՝ մէկ կողմանէ բնիկ Ս. Հարց և միւս կողմանէ հեռաւորնակ Իսիդորի Պելուսացւոյ մէջ։*

*Միեւնոյն ժամանակ երբեք չպակսեցաւ երկրէն աւազակութիւնը՝ կռիւ ու մարդասպանութիւն առօրեայ բաներ էին։*

*Ինչպէս այսօր հազար քարայրներու երկիր կը կոչուի, այն ժամանակ ալ Ամասիոյ շրջակայքը գաւառ մը հազար գիւղերու երկիր կը կոչուէր* (Chiliokomon=*Հազարագիւղ, Ստրաբոն, ԺԲ.* 3, 39), *և Մուրինա Աչխէն անդին կատարած միակ ասպատակութեան ատեն կործանեց* 500 *գիւղեր (Ապպիանոս՝* «Միհրդատ», 65)։

*Ինչպէս նաեւ այսօր Նիւշէհիր, Արեբսուն, Իւրգիւպ, նոյն ժամանակ ալ յիշեալ տեղերէն ոմանք խմբուած էին ժայռի մը շուրջը՝ որ միջնաբերդի տեղ կը բռնէր (Կաբիրա, Ամասիա), ուրիշները՝ հռչակաւոր սրբավայրերու շուրջն՝ որոնց պաշտպանութեան ներքեւ էին աւաններն ու բնակիչները (Զելա, Կոմանա)* (Zimmerer, *ՀԱ.* 1900, *էջ* 111)։

*Երբ Կապադովկիա հռոմէական նահանգի կը վերածուէր, արդէն վերջին երկու դարերու ընթացքին Արիարաթ Ե.է (166–130) ընդգրկուած հելլենականութեան զարգացումը իր զենիթին հասած էր։*

*Այդ ժամանակամիջոցին արքունիքն ու անոր կապուած անձեր, կ'ըսէ Մոմսէն* (Հռոմ. Պատմ. Ե. 306) *հելլենացած էին։ Կեսարիա մայրաքաղաքը՝ հին Մաժակը, որ փռիւգական Ապամէայի պէս՝ արեւմտեան ծովափանց և Եփրատի շրջակայ երկիրներու մէջ ընդարձակ առեւտուրի հաղորդակցութեան միջնավայր մըն էր, և հռոմէական ժամանակ ալ՝ ինչպէս տակաւին նաեւ այսօր՝ Փոքր Ասիոյ ամենածաղկեալ առեւտրական քաղաքներէն մին, Միհրդատեան պատերազմներէն վերջը ո՛չ միայն կրկին շինուած էր Պոմպէոսի հրամանաւ, այլ հաւանօրէն նոյնիսկ այն ատեն ստացած էր քաղաքային իրաւունք յունական ձեւով։ Յետոյ բացի Տիանայէն յունական քաղաքային իրաւունք ստացաւ նաեւ Մարկոս կայսեր այն կապադովկեան գիւղը՝ ուր անոր կինը մեռած էր, Փաւստինոպոլիս յորջորջուելով։ Այդ ժամանակ արդէն Կապադովկիացիք յունարէն սկսած էին խօսիլ, բայց կապադովկիացի ուսանողներն ուրիշ տեղեր շատ բան կրել ստիպուած էին իրենց բիրտ շեշտին և արտաբերութեան ու շեշտման թերութեանց համար, իսկ երբ ատիկկերէն խօսիլ կը սորվէին՝ իրենց հայրենակիցները բռնազբօսիկ կը գտնէին այն լեզուն։*

*Գաւասնիաս Կեսարացի (առ Ֆիլոստրատոս,* «Վարք Սոփեստաց» *Բ.* 13) *Հերոդէս Ատտիկոսի որեւը կը զարնէ անոր լեզուութիւնները և ճանձրալեզու կը կոչէ զայն, վասնզի ինչպէս որ կապադովկիացւոց քով սովորական է՝ բաղաձայններն իրարու կը կապէ, երկարները սուղ՝ և սուղերն երկայն կը հնչէ։*



*Միայն յետոյ քրիստոնէութեան ժամանակ Յուլիանոս կայսեր դասընկերները՝ Գրիգոր Նազիանզացի և Բարսեղ Կեսարացի՝ լաւագոյն համբաւ մը տուին Կապադովկեան անուան։*

*Կապադովկեան միակ յիշատակարանները որոնք Միհրդատեան շրջանին կրնան հասնիլ, են ժայռափոր դամբանները՝ բոլորովին հելլենական զարդերով պճնուած։*

*Երկրին մէջ յունական ոգւոյն և յոյն լեզուին զարգացման կարեւոր նշաններէն մին ալ այն է որ Միհրդատի իշխանութեան ատեն ներքնաշխարհին շատ տեղերը՝ Կոմանա, Գազիուրա, Կաբիրա, Պիմոլիսա, Տալաւրա, թողլով նաեւ Ամասիան ու Լաւոդիկէն, պղինձ դրամներ դրոշմեցին յունարէն վերտառութիւններով և պատկերներով՝ որոնք մեծ մասամբ առնուած էին Պերսէոսի գրոյցէն։ Եթէ նկատենք երկիրը Հռոմայեցւոց ժամանակ քաղաքակրթութեան տեսակէտով, երկու իրողութիւններ ակնյայտնի առջեւնիս կ'ելլեն, Քրիստոնէութեան մուտքն և հին յիշատակարաններու կողոպտուիլն ու կորսուիլն* (Zimmerer, *ՀԱ.* 1900, *էջ* 111–112) *նկատելի է որ Հռոմէական տիրապետութեան տակ Կապադովկիա տակաւին կը պահէր իր սեփական լեզուն, ինչ որ նշանակելի է։*

*Ստրաբոն՝ (Գիրք ԺԲ.) որ կապադովկիացի մըն էր, յաճախ կը շեշտէ կապադովկեան լեզուին գոյութիւն ունենալը։*

«Նաեւ Կապադովկիա, կ'ըսէ, շատ մասերու բաժնուած է եւ զանազան «փոփոխութիւններ կրած: Մանաւանդ անոնք որ *միեւնոյն լեզուն* կը խօ-«սին, սահման ունին հարաւէն Կիլիկեան կոչուած Տաւրոսը. արեւելքէն՝ Հա-«յաստան եւ Կողքիս եւ միջանկեալ այլեւայլ լեզուներով(1) ազգերը, հիւսիսէն՝ «Եւքսինոս մինչեւ Հալիսի բերանը, եւ արեւմուտքէն՝ Պափլագոնիացւոց եւ «Գաղատացւոց ազգերն որոնք Փռիւգիա նստած են, մինչեւ Լիկաւոնացիքն ու «Կիլիկեցիքն որ լեռնային Կիլիկիան կը բնակին: Անոնց մէջ՝ որոնք նոյն լեզուն «կը խօսին, Կատաւոնացիքն սկզբանէ ի վեր անջատ եւ Կապադովկիացիներէն «տարբեր ժողովուրդ մը կը նկատուին, եւ ազգաց թուահամարին մէջ Կապադով-«կիայէն ետքը կը հաշուուէր Կատաւոնիա, յետոյ Եփրատ եւ անդին եղող ազգե-«րը. այնպէս որ Մելիտենէն ալ Կատաւոնիայի կը համարուէր՝ որ վերջնոյն եւ «Եփրատի մէջ կ'իյնայ եւ մինչեւ Կոմմագենէ կը հասնի: Բայց Մելիտենէ Կապա-«դովկիոյ տասներորդ մասն է, երկրին տասն կուսակալութեանց բաժանուելէն «ի վեր: Վաղնջի Արքեղայոսէն առաջ արքաներ նորագոյն ժամանակներս այս-«պէս բաժնած են Կապադովկիոյ պետութիւնը եւ Մելիտենէ՝ Կատաւոնիայի «հետ (2) այս տասն մասերուն մէկն է: Իմ ժամանակս՝ (— 63 Քր.է առաջ մին-

---

(1) *Լեզուական այս դժուարութիւնները արդէն Կարոլիտիս (իր յաճախ յիշուած գրքին մէջ՝* Γλωσσάριον συγκρίτ. Ἑλληνοκαππαδοκίων λέξεων, *Զմիւռնիա,* 1885) *ջանացած է պարզել՝ ընդունելով մեծ խառնուրդ մը* հայկական *տարրերու։ Յաջողութեամբ գործածած է նաեւ Ս. Բարսեղի գրութիւնը ուր Ս. Հայրը կը հաստատէ որ նոյնիսկ իր օրերուն տակաւին կ'ապրի կապադովկեան լեզուն, ի ճառին* πρὸς τοὺς λέγοντας μὴ συναριθμεῖσθαι *և այլ կ'ըսէ՝ «Աննման է* տեղական *լեզուաւ այլազգ ըսել եթէ նաեւ ուզուի և այլ»* (*ՀԱ.* 1900, *էջ* 112)։

(2) *Կատաւոնիա՝ Կիլիկիոյ մասն էր, ինչպէս Հերոդոտոսէն* (Ա. 72 *և Ե.* 54) *գիտենք։*

«չեւ 19 Քր.է յետոյ) այս երկուքին իւրաքանչիւրն ալ իր յատուկ կուսակալն ունէր: Բայց որովհետեւ ասոնց եւ Կապադովկացւոց մէջ ո՛չ լեզուի եւ ո՛չ սովորութեանց ոեւէ տարբերութիւն կայ, իրենց ցեղային տարբերութեան հետքերը «զարմանալի կերպով բոլորովին անհետացած են: Թէպէտ բաժնուած էին. բայց «Արիարաթէս՝ Կապադովկիոյ առաջին թագաւորն՝ իր պետութեան հետ միա-«ցուց»: (տես ՀԱ. 1900, էջ 112):

Ահա թէ ի՛նչ վիճակ կը ներկայացնէր Կապադովկիա իր Հռոմէական կայսրութեան կցուած ատեն։

Ռամսէյ իր հոյակապ գործին մէջ ճեռնահասութեամբ ցոյց կուտայ թէ Կապադովկիա Հռոմէական տիրապետութեան տակ ընդգրկելով հանդերձ մօտաւորապէս Ստրաբոնէ ընդգծուած տարածութիւնը, կրած է աւելի կամ նուազ փոփոխութիւններ սահմաններու, որոնց աւելորդ կը համարեմ անդրադառնալ։

Հետաքրքիրներ կրնան դիմել իր գիրքին (տես, The Historical Geography of Asia Minor. էջ 314-315)։

# Բ.

## ՀՌՈՄԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

Կապադովկիա Տիբերիոսի օրով (14–37) 17ին կատարուած կցումէ յետոյ կառավարուեցաւ Հռոմէն ղրկուած կուսակալներով որոնք procurateur տիտղոսը կը կրէին։

Կապադովկիա՝ Հռոմէական մեծ կայսրութեան երկիրներուն մէջ, մասնաւոր ուշադրութեան առարկայ ըլլալու դուն ուրեք արժանացած է։

Սակայն անիկա իբր ճամբան դէպի Հայաստան և Միջագետք գացող բանակներուն կրեց հետեւանքները այն տեւական պատերազմներուն որոնք Հռոմ մղեց մասնաւորապէս Հայաստանի տիրապետութեան կամ անոր իր հովանաւորութեան տակ մնալուն համար, որ անհրաժեշտ կը դատէր իր ասիական ստացուածքներուն ապահովութեան համար, Հայաստանի ռազմական դիրքին պատճառով։

Արդարեւ հազիւ Տիբերիոս Կապադովկիան կցած իր հողերուն՝ (17), Հայաստանը եւս իր ազդեցութեան տակ առնելու համար, հոն ղրկեց 18ին Գերմանիկոսը թագաւորեցնելու Հայոց Հռոմի անձնուէր Պոնտոսի Պիւտաթորիս թագուհիին— Կապադովկիոյ վերջին թագաւորին կնոջ— որդին Զենոնը որ Հայերը Արտաշէս Գ. (18–34) կոչեցին։

Տակաւին Տիբերիոս մեռած չէր երբ իր ծերութեան օրերուն՝ Արտաւան Գ. (10 – 40) Պարթեւներու թագաւորը ո՛չ միայն Հայաստանը իր տիրապետութեան տակ առաւ, հոն թագաւոր դնելով առանց Հռոմի հաւանութեան իր Արշակ որդին (35), այլ նաեւ յանդգնեցաւ յարձակիլ Կապադովկիոյ վրայ և պահանջել Հռոմայեցիներէն Վոնոնի գանձերը և նախապէս պարսից վերաբերեալ երկիրները (Տակիտոս, Գարագաշեան, ՔՆՆ. Պատմ. Բ. 200)։

Տիբերիոս՝ Վրաց Փարսման թագաւորին դաշնակցութեամբ կրցաւ ստիպել Պարթեւները որ քաշուին Կապադովկիայէն և Հայաստանի մէջ երկար մաքառումներէ յետոյ վերջապէս Հռոմ կրցաւ իր հեղինակութիւնը հաստատել։

Կղոտիոս Ա. կայսեր (41–54) ատեն, երբ Հռոմի դիրքը Արեւելքի մէջ զօրաւոր էր և իր սահմանները մինչեւ Հայաստան հասած էին, Կապադովկիա կը գտնուէր procurateurի հանգամանքով՝ Յուլիոս Պեղիգնոս (Jnlius Pélignus) անհեթեթ ու տգեղ կազմով անձ մը, որ հին բարեկամը և երիտասարդական կոպիտ զբօսանքներուն ընկերն էր կայսեր։ Իրեն պաշտօն տրուեցաւ նուաճել Հայաստանը ուր Ռադամիզդ վրացին՝ իր հօրեղբայրը՝ Միհրդատ Հռոմի հաւատարիմ թագաւորը սպաննելով գահը յափշտակած էր։ Ուստի զինեց Կապադովկիոյ նահանգին պահակազօրքը և անցաւ Եփրատը և շատ չարիք հասցուց Հայոց։ Բայց շուտով լքուած իրեններէն և ճնշուած բարբարոսներէն իր զօրքերուն մէկ մասով միացաւ անոնց որոնց դէմ կռուելու եկած էր և թելադրեց Ռադամիզդը թագ առնելու և իր զինուորներով ներկայ եղաւ անոր թագադրութեան հանդէսին։ (Տակիտոս, ԺԲ. 49, Asie Mineure, էջ 419)։



ԴՈՄԵԴԻՈՍ ԿՈՐԲՈՒՂՈՆ

Հայաստանի նուաճումը ի գլուխ հանելու համար երբ Ներոն (54–68) Դոմեդիոս Կորբուղոնը Հայաստան ղրկեց, այս նշանաւոր զօրավարը, երկու տարի յաջորդաբար ձմեռեց Կապադովկիա, բանակին մէջ կարգապահութիւնը վերահաստատելու համար և որպէսզի այս նպատակին հասնի ստիպուեցաւ իր զօրքին մէկ մասը արձակել և նոր զօրք հաւաքել Կապադովկիայէն և դրացի Գաղատիայէն, որոնց կուսակալն էր։

Երբ ինքն Ասորիքի կուսակալ եղաւ (59 – 60) Հայաստանը նուաճելու գործը յանձնուեցաւ Կեսեննիոս Պիտոս անուն յոխորդ, ամբարդաւան և մեծամիտ զօրավարի մը որուն հրամանին տակ դրուեցան Պոնտոսի, Գաղատիոյ և Կապադովկիոյ բանակները։

Պիտոսի չարաչար պարտութենէն յետոյ Կորբուղոն լիազօր հրամանատար կարգուեցաւ դարձեալ և կրկին Կապադովկիոյ մէջ իր բանակը վերակազմելէ յետոյ անցաւ Եփրատը և Հայաստանը Հռոմի հնազանդեցուց։

Վեսպասիանոս կայսրը (69–79) որ Արեւելքի մէջ կայսր հռչակուած էր իր իշխանութեան շրջանին Կապադովկիա նահանգը ընդարձակեց (70ին), անոր միացնելով Փոքր Հայքը և երկու միացեալ նահանգներէն կազմեց պատուար մը ( J. Lanrent. «L'Arménie entre Byzance et l'Islam» 1919 էջ 301)։

Պարթեւներու հետ Հռոմ իր պայքարը՝ գլխաւորաբար Հայաստանի պատճառով, շարունակած է, սակայն Կապադովկիոյ մէջ խաղաղութիւնը չէ վրդովուած բաւական երկար ատեն մը։

Ադրիանոս կայսեր (117-138) ատեն Կապադովկիոյ կառավարիչն էր Արրիանոս (Flavius Arrien) (Դիոն. Կասիոս ԿԹ. 794) որ ըստ ամենայն հաւանականութեան նոյնինքն այն անձն է որմէ հասած են մեզի բազմաթիւ փիլիսոփայական, պատմական և ռազմագիտական գործեր։

Անիկա ծնած էր 100 թուականին, Նիկոմիդիա, և յոյն էր ազգով և աշակերտն էր Եպիկտետոս փիլիսոփային։ Իր տաղանդով և պերճախօսութեամբ հասաւ բարձր աստիճաններու և մինչեւ հիւպատոսութեան (Tillemont. II 292)։

Երբ Կապադովկիա կը գտնուէր ան Ալանները, Իբերիոյ Փարազման թագաւորին թելադրութեամբ, արշաւեցին Հայաստան և Մարաստան և ըրին նոյն իսկ քանի մը ասպատակութիւններ Հռոմէական նահանգներուն մէջ, մինչեւ Կապադովկիա (133) ինչ որ պատճառ եղաւ իրենց վերջնական խորտակման։

Վաղարշ, Պարթեւաց թագաւորը (77 – 147) զանոնք հեռացուց նուէրներով, Արրիանոս զանոնք վախցուց իր հաստատամիտ ընթացքով և ստիպեց Փարազմանը երթալ շնորհ խնդրելու Հռոմէն (Դիոն Կասիոս ԿԹ. 794-795)։

Մեզի հասած է իր հրահանգը ուղղուած իր տեղակալին որ բարբարոսներու հետ պիտի կռուէր։ Այդ հրահանգին մէջ իր բանակը կազմող գունդերը և անոնց հրամայող սպաները մանրամասնօրէն կը տեսնուին (Tilemont. II 269, 292-3)։

Այս տեղեկագիրը կարեւոր պատկեր մըն է Հռոմէական այս ծայրագաւառին Բ. դարու (131-137 Քր.է յետոյ) կեանքին վրայ։

Նոյն անձը գրած է նաեւ Տարերք Ռազմավարութեան մը, Աղեքսանդրի կեանքը, Եպիկտիտոսին խօսակցութեան չորս գիրքերը (1)։

Այս ժողովրդական տարբերքով (Manuel = encheiridion) Արրիանոս կը ծանօթացնէր իր վարպետին վարդապետութիւնները հաղորդուած բարեկամներու և ունկնդիրներու պզտիկ շրջանակի մը, երբեմն Հռոմ և յետոյ իր աքսորին մէջ՝ ի Նիկոպոլիս (Եպիրոս)։

Արրիանոս գրած է նաեւ Եւքսինեան Պոնտոսի շուրջ ճամբորդութեան մը կամ նաւարկութեան մը նկարագրութիւնը, Տրապիզոնէն մինչեւ հին Dioscuriade, որ կը կրէր այն ատեն Sèbastopolis անունը։ Կարմիր ծովու վրայ նաւագնացութեան մը նկարագիրը, — որ թերեւս պէտք է վերագրել աւելի հին հեղինակի մը — և Հնդկաց վրայ գիրք մը։

Արրիանոս գրած էր նաեւ Պարթեւաց պատմութիւն մը 17 գիրքերով, գիրք մը Ալանաց պատերազմին վրայ և հատոր մը իր ծննդավայր Բիւթանիոյ վրայ։ Այս գործերը կորսուած են դժբախտաբար (Asie Mineure էջ 433)։

Արրիանոս այսպէս ինքն ալ փորձեց անձնապէս ներկայացնել ինչ-

(1) Իր վարդապետին Եպիկտիտոսի գործերէն ոչինչ հասած է։ Իր հռչակաւոր աշակերտը՝ Արրիանոս փրկած է իր վարդապետին խրատական համառօտ խօսքերը դասաւորելով Առձեռնականն Եպիկտիտեայ անունով։

Համառօտ այս գրքոյկը թարգմանուած է հայատառ թուրքերէնի «Էպիկտետոսիւն էլ ճիւզիւ» անուն գրքոյկով մը (տես. Պատմութիւն մատենագրութեան Յունաց, Հռովմայեցւոց եւ Հայոց Եկեղեցւոյ Վենետիկ, 1856 էջ 510)։



պէս իր վարպետը ստոյիկեան սկզբունքներու արժէքը և ցոյց տուաւ իր գործունէութեամբ իբր պետական մարդ և իբր զօրավար թէ ներքին կեանք մը և զուտ մտաւորական զբաղումներ անհաշտ չեն գործնական կեանքի և վարչական գործերու մատակարարութեան հետ։ (Dr. Georges Weber. Histoire Universelle. t. III. Histoire Romaine. 1884 Paris էջ 336)։

Արրիանոսի գործերէն զինուորական կազմակերպութեան վրայ գրածը և մանաւանդ Մեծն Աղեքսանդրի արշաւանքներուն վրայ իր գրութիւնը Քսենոփոնի նմանութեամբ և անոր նման տիտղոսով մը (Anabasis) կը համարուին դարուն լաւագոյն գրական արտադրութիւնները։

Իր Հնդկաստանի վրայ գրած գիրքը կրնայ համարուիլ Անապասիսի շարունակութիւնը (Weber. նոյն)։

Ադրիանոս կայսեր ժամանակը՝ որ Հռոմէական կայսրութեան համար եղած է մտաւորական շարժման և նիւթական բարգաւաճման շրջան մը, այսպէս իր հառագայթումը կ'ունենար նաեւ Կապադովկիոյ մէջ, որուն գլուխը կը կանգնէր իբր կուսակալ, ժամանակին ամէնէն փայլուն մտաւորականներէն մին, որ գիտցած է իր վարչական զբաղումներուն մէջ մտաւորական աշխատութիւններու ալ ժամանակ գտնալ և արտադրել գրական կարեւոր գործեր։

Դժբախտութիւն մըն է որ Հռոմէական կայսրութիւնը, իր այս քաղաքակրթական զարգացման շրջանին չկրցաւ վայելել խաղաղութիւն և բարբարոս ժողովուրդներ իր ամէն սահմաններու վրայ երեւցային։ Մանաւանդ իր ասիական նահանգները շարունակ առարկայ էին յարձակումներու և Հռոմ՝ ներքնապէս ապականուած ու քայքայուած անզօր էր պաշտպանելու զանոնք, հոն ապահովելու համար բարգաւաճումը և զարգացումը Հռոմէական քաղաքակրթութեան։

Հակառակ անոր որ Հռոմէական կայսրութիւնը նոյնիսկ Հայաստանը նուաճած և հոն հռոմէական բանակ մը դնել սովորութիւն ըրած էր, իր կողմէ կարգուած թագաւորները պաշտպանելու համար Պարթեւաց դէմ, Հռոմ քանիցս տկարացաւ և թոյլ տուաւ որ Պարթեւները իրենք նշանակեն Հայոց թագաւորները։

Կապադովկիա, իբր դրացի երկիր Հայաստանի այդ տեղի անցքերուն անմիջական ազդեցութեան ենթարկուած երկիրը եղած է վասնզի Հռոմ այս ճամբով իր բանակները Հայաստան ղրկած է կամ Պարթեւները՝ երբ յաղթած են Հռոմի՝ հոն մտած են և տակնուվրայ ըրած են երկիրը։

Այսպէս երբ Սոյիմ (ըստ Հայոց՝ Տիգրան) (160-169) որ Հռոմի կողմէ Հայոց թագաւոր կարգուած էր, երբ վանուեցաւ Պարթեւներէն և անոնց կուսակից Հայերէն, օգնութիւն խնդրեց Կապադովկիոյ Սեւերիանոս կուսակալէն, որ փութաց Հայաստան, սակայն պատերազմին մէջ նետահար սպանուեցաւ (162), և Պարթեւք՝ արշաւեցին Կապադովկիա, ինչպէս կը վկայէ Յուլիոս Կապիտոլինոս (Գարագաշ. ՔՆՆ. Պատմ. Բ. էջ 260-261)։

Իր յաջորդը՝ Ստատիոս Պրիսկոս, Մարտինոս Վերոս զօրավարին հետ Հայաստան արշաւեց և կործանեց Արտաշատը (Կ. Յ. Բասմաջ.

Քննական Պատմութիւն Հայոց, 1914, էջ 193), և հարկադրեց Պարթևները հաշտութեան (164)։

Սեպտիմոս Սեւերոս կայսեր (193–211) ատեն որ իր Պարթևներու դէմ յաղթական պատերազմներով նշանաւոր եղաւ Կապադովկիոյ կուսակալն էր Կղաւտիոս Հերմինիանոս։

Կարակալլա կայսեր (211-217) անխորհուրդ պատերազմներէն յետոյ իր յաջորդը Մակրինոս (217-218) չարաչար պարտուած ստիպուեցաւ խաղաղութիւն կնքել, սակայն իր խստութեանց համար ատելի դարձած ըլլալով զօրքը կայսր հռչակեց Կարակալլայի կարծեցեալ որդին՝ Հելիոգաբալը, որմէ պարտուած Մակրինոս փախաւ Կապադովկիա, որուն Արքեղայիս քաղաքին բնակիչները բռնեցին զինքը և սպանեցին (218)։

Քիչ յետոյ Արեւելքի մէջ կատարուած մեծ յեղափոխութիւն մը նոր սպառնալիքներ պիտի կուտակէր Հռոմէական երկիրներու գլխուն։



ՍԱՍԱՆԵԱՆ ՇԱՊՈՒՀ Ա,Ի ԴՐԱՄ

Այս յեղափոխութիւնն էր Ստահրացի Արտաշիր Պարսիկին ձեռնարկը որով վերջ տուաւ Պարթև-Պահլաւ արքայական հարստութեան և ինքզինքն հռչակեց «Արքայից Արքայ» (226) և հիմնեց Սասանեան Պարսիկ պետութիւնը, հին Կիւրոսի և Քսերքսեսի կայսրութիւնը վերակազմելու առաջադրութեամբ։

Հետևաբար իր առաջին գործը եղաւ Հռոմի դէմ պայքարը, որուն մէջ իր հեծեալ դէտերը մինչև Կապադովկիոյ մօտերն հասան (230), սակայն Հռոմ յաջողութեամբ մաքառեցաւ անոր դէմ թէ՛ Աղեքսանդր Սեւերոս Բ.ի (222–235) և թէ՛ Մաքսիմիանոս (235–238) կայսրերուն ատեն։

Մաքսիմիանոսի ատեն Կապադովկիոյ Հռոմէական կուսակալն էր Սերենիանոս։

Արտաշիր Սասանեանի յաջորդեց իր որդին Շապուհ Ա. (241–271) որ անմիջապէս որ գահ բարձրացաւ մտաւ Հռոմէացւոց երկիրները և մինչև Կապադովկիա և Կիլիկիա առաջացաւ (241) (Գարագաշեան, ՔՆՆ. Պատմ. Բ. էջ 272) և սպառնաց Անտիոք քաղաքին։

Գորտիանոս Գ. կայսրը (238-244) յաջողեցաւ վանել Շապուհը, որ պատեհ առիթի մը սպասեց վերստին յարձակելու համար։

Այս առիթը ընծայեցին Գոթացիք որոնք արշաւեցին Հռոմէական երկիրները (257–260) Վալերիանոս կայսեր (253–260) ատեն։

Սեւ Ծովու հանդիպակաց եզերքը հաստատուած Գոթացիք 257էն 260 ամէն տարի յաջորդաբար անցան Սեւ Ծովը և Պոնտոսի եզերքներուն վրայ երեւացին և իրենց բարբարոս արշաւանքին ու աւառութեան առարկայ ըրին այդ ծովեզերքները և անոնց դրացի երկիրները (տես Asie Mineure, էջ 440)։

Շապուհ Ա. օգտուելով Հռոմէական տէրութիւնը փոթորկող այս վերիվայրումներէն, իր բանակներով ոտնակոխ ըրաւ Հռոմէական




կայսրութեան սահմանները և ողողեց Փոքր Ասիան և աւերեց ինչ որ խուսափած էր գոթացիներէն։

Կիլիկեան Տարսոն աւերակ դարձաւ բոլորովին։ Կապադովկիոյ գլխաւոր քաղաքը՝ Կեսարիա, փորձեց դիմադրել և չարաչար պատժըւեցաւ։

Պարսից թագաւորը աննկարագրելի անգթութիւններ ըրաւ, ըստ ժամանակագիրներու։

Կը պատմեն թէ մեռեալներու դիակներու կոյտերը ձորերը կը լեցնէին և կամուրջներ կը ձեւացնէին, որոնց վրայէն Շապուհ հաճոյք կ'զգար ձիով անցնելով։

Նոյնպէս կը պատմեն թէ գերիներուն միայն չմեռնելու չափ սնունդ կուտային և զանոնք օրը անգամ մը անասուններու պէս ջուրի կը տանէին։ (Զոնարաս, 234, Agathias. I. IV.)։

Շապուհ՝ Փոքր Ասիան ոտնակոխ ընելէ յետոյ կործանեց Անտիոքը և պաշարեց Եդեսիան։

Վալերիանոս կայսրը, որ պարսիկ արշաւանքը կասեցնելու համար անձամբ Արեւելք եկած էր և այս պատերազմին մէջ գերի ինկած, կը պատմեն թէ ստիպուած էր ծունկի գալ ծառայելու համար իբր պատուանդան Պարսից Արքայից Արքային, անոր ձի հեծած ատենը։

Վալերիանոս այսպէս երկար ատեն իր անգութ յաղթականին իբր նշաւակ ծառայելէ յետոյ մորթազերծ եղաւ և իր մորթին մէջ յարդ լեցուեցաւ և ծիրանի հագուստներով կախուեցաւ տաճարի մը մէջ (260) որպէսզի յետոյ ցոյց տան հռոմէացի դեսպաններուն (Asie Mineure, էջ 441)։

Այս նկարագրութիւններէն պակսեցնելով չափազանցութեան բաժինը, անտարակոյս է որ այս արշաւանքը Փոքր Ասիոյ և մասնաւորապէս Կապադովկիոյ բնակչութեան պատճառեց աղէտներ որոնց գաղափարը այլեւս տարիներէ ի վեր չունէին անոնք շնորհիւ Հռոմէական կայսրութեան հզօր տիրապետութեան։

Շապուհ Ա. յուսահատ կայսրութեան հողերուն վրայ տեւականօրէն հաստատուելէ, ուզեց իր ետին թողուլ միայն անապատներ, ուստի իր երկիրները փոխադրեց նուաճուած նահանգներուն բնակիչները՝ գանձերուն հետ։ (Gibbon, գլ. ժ. և Asie Mineure, էջ 441)։

Ապահովաբար այս տարագրուած բնակչութեան մէջ կային մեծ թուով քրիստոնեաներ, որոնք Պարսկաստան տարուեցան։

264ին Գոթացիք (Σκοθαί) դարձեալ հինարար արշաւեցին Փոքր Ասիա և Մակեդոնիա։ Ի մէջ այլոց Կապադովկիա ոտնակոխ եղաւ անոնցմէ և շատ մը քրիստոնեաներ գերի տարուեցան (Zimmerer)։

Սակայն այս արշաւները որոնք աւեր կը տարածէին երկրին մէջ և անոր Հռոմէական կայսրութեան տակ խաղաղ բարգաւաճման ընթացքը կ'ընդհատէին պարբերաբար, բարեբախտաբար վաղանցուկ հանգամանք ունէին։ Հռոմ այս բարբարոսները շուտով կը վանէր իր սահմաններէն դուրս և իր իշխանութիւնը կը վերահաստատէր։

Սակայն զանազան տագնապներ միշտ կը ծագէին անհանգիստ Արեւելքի մէջ, ուր ո՛չ միայն արտաքին պատերազմներ այլ ներքին խռովութիւններ իրարու կը յաջորդէին։

Կապադովկիա երբ իր սահմաններէն հեռու էր պատերազմը, կը

մար խաղաղ սակայն երբեմն կը կոխոտուէր թշնամիներէ որոնք մինչեւ հոն կը յառաջանային։

Հազիւ Բալմիրայի Զենոբիա թագուհիին յարուցած փոթորիկը ընկճուած՝ (273ին) Սկիւթացի վոհմակներ դարձեալ աւերելով թափառիլ սկսան Պոնտոսէն մինչեւ Կապադովկիա և Կիլիկիա (275–276), (Զոսիմոս 1, 63, Զոնարաս 12, 28, Ասատուրեան, նոյն, էջ 251)։

Տակիտոս կայսրը որ ակամայ յօժարած էր Պարսից դէմ երթալու, այս խառնակ օրերուն, առանց ճակատելու ժամանակ ունենալու, Կապադովկիոյ մէջ կ՚սպանուի (276)։

Զօրքին հաւանութեամբ նոյնիսկ Կապադովկիոյ մէջ կայսր հռչակուեցաւ Պռոբոս (276–282), զինուորական տաղանդով նշանաւոր երիտասարդ մը, որ կայսրութեան սահմաններու սպառնացող զանազան բարբարոսներու հետ կռուեցաւ և զանոնք վանեց Հռոմէական կայսրութեան սահմաններէն։

Յաղթեց նաեւ վայրենի Իսաւրացիներուն —Կապադովկիոյ դրացի այս ժողովուրդին— իրենց լեռներու անցքերուն մէջ և ամրապնդեց Փոքր Ասիոյ մէջ Հռոմի տիրապետութիւնը։

Յետոյ ձեռնարկեց Պարսից դէմ արշաւանքի մը, և ձեռք բերաւ առանց կռուի նպաստաւոր դաշինք մը, որ Դիոկղետիանոս (284–305) աւելի ամրապնդեց և Հայաստանը Հռոմի ազդեցութեան տակ առնելով հոն թագաւոր դրաւ Տրդատը (287) որ Կեսարիոյ ճամբով մտաւ Հայաստան։ Դիոկղետիանոս՝ կրցաւ Պարսից դէմ շահիլ փառաւոր յաղթանակ մը եւս և զանոնք ստիպել խնդրելու հաշտութիւն մը, որով Տիգրիսը, Կորտուքէն սկսեալ դէպի վար սահման եղաւ երկու պետութիւններուն։

Դիոկղետիանոս այս կերպով ամենամեծ ծառայութիւն մը մատոյց Հռոմի, ապահովելով անոր քառասնամեայ խաղաղութեան ժամանակամիջոց մը և կազմակերպելով իր սահմաններուն վրայ՝ Հռոմի համակիր պատուար պետութիւն մը (Etat tampon) Հայաստանն, բաւական զօրաւոր և պատկառելի։

Պարսիկները յարգեցին իրենց դաշինքը և 40 տարի զէնք չվերցուցին Հռոմին դէմ։

Դիոկղետիանոս, որ լաւ վարիչ մը կը թուի ըլլալ, ստեղծեց վարչական նոր դրութիւն մը, իրեն գահակից ընտրելով Մաքսիմիանոսը կարող բայց կոպիտ զինուոր մը։

Երկուքն ալ կայսերական համահաւասար իրաւունքներ ունէին և Էմբէրաթօր – Կեսար – Օգոստոս տիտղոսը կը կրէին։

Երկու Օգոստոսները կայսրութիւնը երկու մասի բաժնեցին։ Ինքն առաւ Արեւելքը և Մաքսիմիանոս՝ Արեւմուտքը։

Ամէն մէկը իր բաժինը երկու մասի բաժնեց, մէկը կայսեր իշխանութեան ներքեւ, իսկ միւսը տեղակալի մը՝ որ Կեսար տիտղոսը կը կրէր։

Դիոկղետիանոսէն առաջ 40 նահանգապետներ կը գտնուէին կայսեր ուղղակի հակակշիռին ներքեւ։ Ան ամբողջ կայսրութիւնը բաժնեց 13 թեմերու, որոնք ստորաբաժնուած էին մօտ 120 նահանգներու։

Այսպէս չորս կուսակալութիւնները ունէին իրենց կուսակալները, որոնք Օգոստոսին կամ Կեսարին պատասխանատու էին։

Ամէն մէկ թեմ կը կառավարուէր տեղակալով մը, որ կուսակալի



պատասխանատուութեան տակ կը գտնուէր։ Նահանգները կը կառավարուէին նահանգապետներով։

Բոլոր խնդիրները տեղական պաշտօնեաներու ձեռքով կը կատարուէին և միայն շատ դժուարին ու կարեւոր խնդիրներ էին որ կը ներկայացուէին աւելի բարձր պաշտօնէութեան։

Դիոկղետիանոսի կարգադրութեան համաձայն Արեւելքի կուսակալութիւնը բաժնուած էր 5 թեմերու որոնք էին.—

1.— ԱՐԵՒԵԼՔ բաժնուած 15 նահանգներու
2.— ԵԳԻՊՏՈՍ » 6 »
3.— ԱՍԻԱ » 11 »
4.— ՊՈՆՏՈՍ » 11 »
5.— ԹՐԱԿԻԱ » 6 »

Կապադովկիան կը գտնուէր Պոնտոսի մէջ, և իրմէն բաժնուած էր Փոքր Հայքը Մելետինէ մայրաքաղաքով։

Դիոկղետիանոսի ժամանակ իբր Կապադովկիոյ կուսակալ կը յիշուին յաջորդաբար Ջելեկինթոս, Սապրիկ կամ Սաբրիկիոս (= Փաբրիկիոս), Ուրպանոս, Փիլոմարքոս, Մաքսիմիանոս, Ֆիրմուս։

Քիչ յետոյ Հռոմէական կայսրութիւնը Կոստանդիանոսի (324–337) իշխանութեան տակ 324ին դարձեալ միակ կայսեր մը հեղինակութենէն կախում պիտի ունենար։ Ան իր իշխանութեան վերջերը, այսինքն 335ին, նոր վարչական կարգադրութիւններ ըրաւ Փոքր Ասիոյ մէջ, և Կապադովկիոյ, Պոնտոսի և Փոքր Հայոց թագաւոր անուանեց իր եղբօրորդին և փեսան Աննիբագիանոսն, բայց այս աւելի սոսկ յորջորջում մըն էր, և միայն երեք տարի (335–338) տեւեց անոր այս իշխանութիւնը, ինչու որ Աննիբագիանոս իր զօրքերէն սպաննուեցաւ, Կոստանդիանոսի մահէն ետքը (Տես. Անդրէաս վրդ. Ալեքսանդրեան, Պատմ. Սեբաստիոյ, էջ 48)։

Մեծն Կոստանդիանոս ուրեմն փորձեց Փոքր Ասիոյ մէջ տեղական նոր իշխանութիւններ կազմակերպելով Հռոմէական կայսրութիւնը ամրապնդել, քաղաքականութիւն որ չէ ըմբռնուած թերեւս իր յաջորդներէն, մինչդեռ իրատես ըմբռնում մըն էր անիկա, պետութիւնը փրկելու համար սպառնացող վտանգներուն դէմ։ Բացորոշ էր թէ Հռոմի սահմանագլուխներուն վրայ թշնամիները մշտապատրաստ էին յարձակելու և ներքնապէս պետութեան շէնքը ամուր չէր։

Արդարեւ հազիւ քառասնամեայ հաշտութեան ժամանակամիջոցը լրացած՝ Շապուհ Բ. Երկարակեաց (309–376), Սասանեան թագաւորներուն ամէնէն աւելի ջղուտը, տոկունը, փառասէրը, սկսաւ վերստին պայքարը, որ գրեթէ 60–70 տարի անընդհատ շարունակուեցաւ փոփոխակի յաջողութիւններով։

Հայաստան անոնց մէջ միշտ բաժին մը ունի և Կապադովկիա՝ իբր անցք կը ծառայէ բանակներու։

Այս պատերազմներուն ընթացքին, 360ին, Կոստանդիոս կայսրը, Կեսարիա հասած ատեն՝ կանխաւ իմաց տուած ըլլալով Հայոց Արշակ Բ. թագաւորին՝ տեսակցութիւն մը ունեցաւ անոր հետ և բարեկամութեան հաւաստիքներ տուաւ (Ամմ. Մարկ. Ի. ԺԱ.)։ Արշակ՝ Կեսարիա երթալով երախտագիտութիւն և հաւատարմութիւն յայտնեց, և ապա անոր յաջորդին Յուլիանոսի (361–363) գործնականապէս օգնեց (363),

ինչ որ իրեն շատ սուղ արժեց, երբ Յովիանոս (363–364) վատաբար Արշակ Բ.ը և Հայաստանը լքեց Պարսից։

Արշակ և իր ժողովուրդը չորս ամբողջ տարիներ դիւցազնական դիմադրութիւն մը ըրին Պարսից, մինչ իրենց ակնարկը Արեւմուտք սեւեռած։

Այս առթիւ կը յիշատակուի հետաքրքրական գրուագ մը որ Հայոց դէպի Կապադովկիա կատարած մէկ արշաւանքին յիշատակը կը բերէ մեզի, թէեւ կասկածելի։

Ըստ Փաւստոս Բիւզանդի երբ Ներսէս Պարթեւ Հայրապետը, Վաղէս կայսեր (364-379) գնաց հաշտութեան մը միջնորդնելու համար (շուրջ 364–367) իրեն տեղապահ թողլով Կարնեցի Խադ եպիսկոպոսը (Նախապէս իր սարկաւագապետը) և հոն Կ. Պոլսոյ մէջ արգելքի հանդիպեցաւ, Արշակ Բ. զայրացաւ եւ Գամրայ կողմերը Վասակ Մամիկոնեան սպարապետին ձեռքով ասպատակութիւններ ընել տուաւ (Գուրեան, Ազգ. Պատմ. էջ 255)։

«Տայր հրաման Վասակայ իւրում զօրավարին զօր ժողովել, զգունդս վանդակել, ելանել հարկանել եւ աւար առնուլ զկողմանս Գամրաց: Իսկ զօրավարն սպարապետն Վասակ, վաղվաղակի զտուեալ հրամանս նորա կատարէր՝ զզօրս բազումս իբրեւ զերկերոյր եւ զվաթսուն հազարաց ի մի վայր կուտէր՝ հարկանէր աւար առնոյր զկողմանս Գամրաց մինչեւ ի քաղաքն յԱնկուրացւոց. զվեց ամ զմիմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց: Լցան աւարաւ բազմաւ եւ պէս պէս մեծութեամբ, բռնութեամբ աստիւ մեծաւ բռնամութեամբ ընդ կողմանս ընդ այնոսիկ» (Փաւստոս Բիւզանդացի, 1914 Վենետիկ, էջ 140):

Այս նկարագրութիւնները կրնան չափազանցութիւններ պարունակել(1), սակայն չեն կրնար բոլորովին անհիմն ըլլալ, վասնզի պատմագիրը ժամանակակից մըն է և իբր ականատես կը գրէ իր ատենին դէպքերը։

Հայոց չորս տարուան դիմադրութենէն վերջը, Հռոմ նորէն միջամտեց և լեգէոններ մտան Հայաստան, Վաղէս կայսեր հրամանով և Ողոմպիադա, հռոմէացի կնոջմէ ծնած Արշակ Բ.ի զաւակը՝ Պապը թագաւորեցնելու համար Հայոց գահուն վրայ (369ի գարուն)։

Տերենտիոս, որ Պապը Հայաստան առաջնորդող Հռոմէական բանակին սպարապետն էր, եօթը տարի Հայաստան մնաց, իբր հրամանատար Հայաստան գտնուող Հռոմէական լեգէոններու։

Այս միջոցներուն (372) Կապադովկիոյ կուսակալի պաշտօնը կը վարէր Դիմիդրիոս։

Քիչ յետոյ Շապուհ Բ. փափաք կը յայտնէր բաժնել Հայաստանը որ մշտատեւ խռովութեան պատճառ կ'ըլլար և Հռոմ կ'ընդունէր իրեն համար փոքր/ասակար այս առաջարկը որ 384ին կը գործադրուէր։

(1) Ներսէս Պարթեւի կենսագիրը (Սոփերք Զ.) Վասակի համար նոյնիսկ ըսած է թէ հասած է «յեզր ծովուն ի տեղւոջ մի որ կոչի Խռսուպոլիս» (այժմ Սկիւտար, Վոսփորի եզերքը) և Վաղէս փախած է Ադրիանուպոլիս, և Նեքտարիոս պատրիարք հաշտութիւն խօսած է և Վասակ ութ ամիսէն դարձած է Հայաստան։ Ասոնք արդարեւ անհաւատալի են, ինչպէս Օրմանեան կ'ըսէ (Ազգապատում, էջ 191 և 193)։



Այս անցքերու միջոցին Շապուհ Բ. իր իշխանութեան վերջին տարիները, դէպի Ասորիք և Կապադովկիա արշաւանք մը ըրաւ, որպէսզի աւարառութիւններով հայթայթէ մէկ մասը այն ծախքին որ ըրած էր ամրացնելու համար Իւրոյպահակ անցքը (այսօրուան Տէրպէնտը) որ ըստ Յուլիանոս կայսեր տեղակալին Սալուստիոսի հետ կնքուած համաձայնութեան մը, Հռոմ և Տիզբոն հասարակաց ծախքով պիտի ամրացնէին և պիտի պահէին հիւսիսական բարբարոսներու յարձակումին դէմ։ Պայման որ Հռոմէացիք չէին յարգած։

Քիչ յետոյ Հայաստանի Հռոմէական բաժինին անուանական քաղաքական անկախութեան վերջ կը տրուէր (386) և ուղղակի կը կցուէր Հռոմէական երկիրներու։

Հռոմէական կայսրութեան սահմանագլուխը կը տեղափոխուէր Կապադովկիայէն շատ հեռու, և այլեւս երկիրը կը փրկուէր ասպատակային արշաւներու և պարսիկ բանակներու ոտնակոխ ըլլալու վտանգէն, որուն սպառնալիքին տակ ապրած էր ամբողջ Հռոմէական տիրապետութեան շրջանին, երբ Կապադովկիա, իրականին մէջ կը ներկայացնէր պատերազմական գօտի մը, ուր կը կազմակերպուէին յաճախ Հռոմէական բանակները։

Երբեմն ծայրագաւառ նկատուած այս շրջանակը Հռոմէական տիրապետութեան մինչեւ Մեծ Հայքի սիրտը տարածուելովը այլեւս կը դառնար կեդրոնական գաւառ մը, ուր թշնամի բանակները հասնելու համար, պէտք էր ընդարձակ երկիրներ գրաւէին։

Ասիկա անմիջական վտանգը կը հեռացնէր կերպով մը և Կապադովկիոյ հռոմէացման գործը կը դիւրացնէր անխուսափելի կերպով՝ հոն ամրապնդելով Հռոմէական տիրապետութիւնը որ չէր կրնար անհետեւանք ու ապարդիւն անցնիլ, նկատի ունենալով պետութեան մեծութիւնը և հզօր քաղաքակրթութիւնը։

Գ.

## ՀՌՈՄ ԻԲՐ ՔԱՂԱՔԱԿՐԹԻՉ

Հռոմի տիրապետութիւնը Կապադովկիոյ մէջ ապարդիւն չէր կրնար ըլլալ, քանի որ անով հոն կը հաստատուէր կանոնաւոր և ամուր վարչութիւն մը որ մեծութիւն մը կը խորհրդանշէր։ Հռոմ պատկառելի ոյժ մըն էր որ իր հզօր քաղաքակրթութիւնը կը ներմուծէր տակաւին կէս քաղաքակիրթ այս երկրին մէջ, զայն դաստիարակելով իր մեթոտներով։

Դժբախտութիւն մըն է որ Կապադովկիա կ'ենթարկուէր Հռոմէական կայսրութեան այնպիսի պահու մը որ թէեւ անիկա իր ընդարձակութեան գ՚ՙնիթին հասած՝ սակայն իր բարոյական բարձրութենէն շատոնց ինկած էր։

Հասարակապետութեան օրերու մաքուր բարոյականը շատոնց խաթարուած և ապականութիւնը՝ հետեւանք ճոխութեան, հարստութեան և պերճանքի, լայնօրէն տարածուած էր Հռոմէական ընկերութեան մէջ։

Հռոմի մեծութիւնը իր անկման ուղին եղած էր, վասնզի Հռոմէական կայսրութեան բարձրագոյն քաղաքակրթութիւնը, ինչպէս Յունաց մէջ պատահած էր, բարոյական ամէնէն մեծ անկումը յառաջ բերած էր։

Գիտութիւնները և արուեստները մշակուած և քաջալերուած էին կայսեր արքունիքին և հարուստներու ապարանքներուն մէջ, թէեւ ամէն դասակարգեր անով կը շահագրգռուէին։

Վաճառականութիւնը և ճարտարարուեստը զարգացած էին։

Հարստութիւնը կեանքի վայելքներուն կը մղէր Հռոմի բնակիչները, և գեղեցիկ բնակարաններ, շքեղ շինութիւններ և բազմամարդ քաղաքներ պատրանքը կուտային երջանկութեան մը որուն մէջ իբր թէ կ'ապրէին կայսրութեան բնակիչները։

Հռոմի, ինչպէս նաեւ նահանգներու գլխաւոր քաղաքներու մէջ, կը հիմնուէին լուսաւորութեան նպաստող հաստատութիւններ և փիլիսոփայական զանազան դպրոցներ իրար կը խաչաձեւէին։

Հռոմէական տիրապետութեան շրջանէն մնացած շինութեան աւերակները, ճամբաները, կամուրջները որոնք մինչեւ հիմա մնացած են մասամբ և որոնք հիացում կը պատճառեն, ո՛չ միայն Իտալիոյ, այլ նաեւ բոլոր նահանգներու մէջ կը շինուէին։

Արձանները, գերեզմանները, քանդակներով և արձանագրութիւններով տաճարները, կաւէ և անագապղինձէ անօթները, մեծաշէն ագուգաները, որոնք այդ շրջանէն մնացած են, կը հաստատեն թէ ինչպէս հին ժողովուրդներու, նոյնպէս Հռոմէական կայսրութեան մէջ, արուեստները և արհեստները տարածուած, մշակուած և բարձր աստիճանի հասած էին։

Արեւելեան և հելլէն աշխարհի քաղաքակրթութիւնը Հռոմի մէջ իրարու լծորդուած և իրարու խառնուած՝ կը տարածուէին նոր փայլով մը մինչեւ կայսրութեան հեռաւոր նահանգները։

Բոլոր նուաճուած երկիրները Հռոմի տիրական ազդեցութեան տակ և հզօր ուժին առջեւ կը կորսնցնէին իրենց ազգային առանձնայատկութիւնները։ Ժողովուրդը, որ պատերազմները և երկրագործական աշխատութիւնները երբեմն այնքան չարքաշ դարձուցած էին, կայսրութեան շրջանին կը մեղկանար և կոշտ հաճոյքներու մէջ կ'ընկղմէր։ Ան կը սիրէր զուարճանալ թատրոններու և ամփիթատրոններու մէջ ներկայացուած տեսարաններով, սուսերամարտական մրցումներով, ինչպէս նաեւ կրկէսի խաղերով։

Աշխատութեան արժէքը և ճաշակը այնքան ինկած էր որ մայրաքաղաքին անթիւ բնակիչներուն կայսերը հաց կը բաժնէին և ամէն օր կ'աճէր հանրային նպաստով ապրողներուն թիւը։ Ապականուած էր նաեւ ընտանիքը, ամէն դասակարգերու մէջ։ Դրամը օրուան Աստուածն էր որուն կը զոհուէին պատիւը, առաքինութիւնը և հաւատքը։ Ի զուր ժամանակակից քանի մը մտքեր ընդհանուր այս ապականութեան դէմ մաքառիլ կը փորձէին։

Ի զուր Տակիտոս պատմագիրը, օրինակի համար, իր տարեգրութիւններով կը փորձէր անկեալ Հռոմին յիշեցնել իր նախնեաց կորովը, բարոյականը և առաքինութիւնը, ինչպէս նաեւ պարզութիւնը հին օրերուն։

Ի զուր իմաստուն Յուվինալիս կամ Յոբնալ (Juvenal) (ծնեալ 42 Ք.Է յետոյ), ժամանակակից Դոմեդիանոս և Ադրիանոս կայսրերու, իր երկասիրութիւնով կատարելապէս կը լրացնէր Տակիտոսի պատմութիւնը, ներկայացնելով ներքին նկարագիրը այն ատենին՝ որուն պատմութիւնը շարադրած է Տակիտոս, և կը ջանար ցոյց տալ իր երգիծանքներով խորութիւնը տիրող մոլութիւններուն։ Ի զուր Լուկիանոս (Lucien) Սամոսատցին, յոյն, ստոյիկեան իմաստասիրութեան հետեւող մը, որ ժամանակակից էր Տրայիանոսի, Ադրիանոսի և Անտոնինեանց և ապրած էր Փոքր Ասիա, սաստիկ ու կծու երգիծաբանութիւններով չէ թէ միայն աստուածներուն սուտ մարդ, այլ նաև անոնց ամէն ախտերու գերի ըլլալը ցոյց կուտար։ Յետոյ առանձին տրամախօսութեամբ ալ դիւրահաւան ժողովրդեան խեղճութիւնը կը ծաղրէր որ այս տեսակ աստուածներուն կը հետեւի և անոնց զոհեր կը մատուցանէ և խնդրանք կը ներկայացնէ։

Թէ՛ քրիստոնէութեան և թէ՛ հեթանոսութեան թշնամի էր Լուկիանոս։ Անիկա կրօնքը զօրաւոր մարդերու ձեռքը զէնք մը կը համարէր խեղճ ժողովուրդը ընկճելու և իրենց նպատակին հասնելու համար։ Անիկա ունէր նաև ուրիշ տրամախօսութիւններ, որոնց մէջ սուր լեզուով և գեղեցիկ ճարտարախօսութեամբ ծաղր կ'ընէր այն փառասէր անձերը որ Անտոնինեանց պաշտպանութենէն չփացած՝ ինքզինքնին իմաստասէր կը հռչակէին։ Լուկիանոս իր հաճոյալի ձեւեր զգեցած գրուածքներով և երգիծանքներով կը ջանար քանդել մոլութիւնները և տկարութիւնները, բարքերը և սովորութիւնները, կրօնքը և աւելորդապաշտութիւնը, որպէսզի նոր և գեղեցիկ շէնք մը կերտուի հինին աւերակներուն վրայ։

Սակայն մարդկային խորհուրդները շատ ուշ կը հասնէին։ Անկումը գահավէժ եղած էր և միայն գերագոյն ոյժ մը կրնար փրկել աշխարհը այս վիճակէն։

Քրիստոնէութիւնը իր նոր վարդապետութեամբ և նոր բարոյականով կրնար վերանորոգութեան մը նպաստել, սակայն Հռոմայեցիք կը յամառէին զայն չընդունիլ, վասնզի անոր հիմնադիրը չէր ներկայանար վեհապետական շքով այլ խոնարհութեան վերարկուով։ Բայց բարոյական անկումին դէմ բան մը ընելու պէտքը կը տեսնային իմաստուն և ողջախոհ մարդիկ։

Ասոր համար շատերը կը ջանային ստոյիկեան փիլիսոփայութեան միջոցաւ վերահաստատել կենցաղական նախկին պարզութիւնը՝ խըստամբերութեամբ և ֆիզիքական կորովով։

Արդարեւ ստոյիկեանք իրենց խիստ ուսմամբն ու կրթութեամբ, համբերատար ժուժկալութեամբ, հաճոյքն ու ցաւը արհամարհելով՝ մեծ յաջողութիւն ունեցան և գրեթէ բոլոր Հռոմայեցւոց սրտին տիրապետեցին։ Հռոմ որ իր կայսրերու վատ ու կնամարդի բնաւորութեամբն իր նախկին քաջասիրտ ուժէն բոլորովին զրկուած, դէպի կործանում կը դիմէր, այս խստակրօն վարդապետութեան սկզբունքներովը կրցաւ դիմադրական ոգի ստանալ գոնէ ժամանակի մը համար, և հայրենասիրական առաքինութիւնը կրկին պայծառութիւն ստացաւ։

Տրայիանոսի, Ադրիանոսի և Անտոնինեան կայսրերու ժամանակ, սկեպտականութիւնը մեծ ծաւալ գտած էր Հռոմի մէջ։ Շատեր տաղանդի և հանճարի տէր, անոր պաշտպան հանդիսացան, ինչպէս Սենե-

կա, Եպիկտետոս և Մարկոս Աւրելիոս կայսրը։ Եպիկտետոս, ծննդեամբ Փռիւգիոյ Յերապոլիսէն, Ասիական ծնունդ էր։

Բայց կնամարդի սերունդները մեղկացած Հռոմին՝ նախընտրեցին յարիլ Եպիկուրեան վարդապետութեան որ գոյութեան նպատակը սահմանափակած էր զգացումներու գոհացման մէջ։

Հետեւաբար Եպիկուրեան իմաստասիրութիւնը իրեն չատ հետեւողներ գտաւ Հռոմի մէջ։

Այսպիսի թոյլ վարդապետութեան մը համար այս յաջողութիւնը բնաւ զարմանալի չէր։

Սակայն մեծ միտք մը չարտադրեց, բացի Լուկրետիոսէն որ Քրիստոսէ 100 տարի առաջ Եպիկուրի վարդապետութիւնը մեկնեց։

Այս անկման առաջնորդող վարդապետութեան դէմ մաքառող ազդեցութիւն մը ունեցաւ Պիւթագորեան վարդապետութիւնը, որուն մէջ աւելի ազնուական կերպ մը կար և պահանջները աւելի համապատասխան էին մարդկային տկարութեան։ Կրօնասէր բարոյականին և հին իմաստութեան պատճառովը երեւելի մարդիկ անոր հետեւեցան և լսարաններ բացին։

Գ. դարուն բաւական թուով մարդիկ յարեցան նոր պղատոնական փիլիսոփայութեան որ հեռու իրական կեանքէն, նախապաշարումները, հրաշքներու հաւատքը, և արեւելեան ցնորքները կը միացնէր Պղատոնի դրութեան, միստիք ըմբռնումով, երեւակայական պատկերներով և մտացածին քմայքներով հին Հռոմէական գործնական տրամաբանութեան տեղը կը դնէր Արեւելքի անգործնական հայեցողութիւնը։

Պղատոնականութեան երկու գլխաւոր վերանորոգիչները եղան Պլոտինոս(1) (Plotin) և Լոնգինոս(2) (Longin), երկուքն ալ Աղեքսանդրեան դպրոցէն։

Այս հակումը և միտումը գործունեայ կեանքէ դէպի խաղաղ ուսումնասիրութեան և գիտութեան մէջ ամփոփուելու, կը տեսնուի նաև գրականութեան ուրիշ ճիւղերուն մէջ։

Հին պերճախօսները տեղ որոնք իրենց սրտին անսալով կը խօսէին, երեւան կուգան հռետորներ որոնք պերճախօսութիւնը կը սորվէին կանոններով և սկզբունքներով։

Բանաստեղծութիւնը անհետացած էր կեանքէն և գրականութենէն։ Քերականագէտները և մեկնիչները կ'զբաղէին հին բանաստեղծներու և դասական հեղինակներու մեկնաբանութիւններով, կը ջանային պաշտպանել անցեալի լեզուական գանձին աւերակը, և կը կիրարկէին գոյութիւն ունեցող գրականութիւնը, կազմելով ժողովածոներ եւ համառօտագրութիւններ։

---

(1) Պլոտինոս (205-270) ծնած է Եգիպտոս և աշակերտած Աղեքսանդրեան դպրոցին, յետոյ գացած է Պարսկաստան Գորտիանոս կայսեր բանակին հետ, որպէսզի արեւելեան իմաստասիրութեան ծանօթանայ։ Յետոյ անցած է Հռոմ ուր դասախօսած է։

(2) Լոնգինոս, դարձեալ աշակերտ Աղեքսանդրեան դպրոցին, խորապէս ուսումնասիրած էր Պղատոնի գրուածքները։ Երկար ատեն Աթէնք կենալէ յետոյ, Պալմիրայի Զենոբիա թագուհիին արքունիքը գնաց և Պալմիրայի գրաւման ատեն սպաննուեցաւ



Ողբերգութիւններու մէջ կը տիրէր չափազանցութիւնը և բեմբասացական ուռուցիկութիւնը, փոխան պարզ դաստիարակչական պատմութիւններու։ Օրէնսդրական գործերը, օրէնքները, դատաստանական վճիռները ծաղկաքաղ կ'ընէին, կը դասաւորէին և կը լուսաբանէին և հիմը կը դնէին օրէնսգիտութեան որ Գ. դարուն նշանաւոր փայլ մը ստացաւ։

Կապադովկիա որ այնքան սերտիւ յարած էր Հռոմի, տիրող կացութեան պատկերը ինքն ալ կրած էր իր վրայ։

Կառուցուած են հոյակապ քաղաքներ, յիշատակարաններ, շինուած են ճամբաներ, ազուգաներ, կրկէսներ, ամփիթատրոններ որոնց մնացորդները կ'երեւան ցարդ։

Կապադովկիա հազիւ թէ Հռոմէական տիրապետութեան ենթարկուած, Տիբերիոս կայսեր իշխանութեան երրորդ տարին՝ այսինքն 17ին, Հռոմէացւոց Ասիական նահանգը անապատ դարձաւ սաստիկ երկրաշարժով մը, որուն հաւանօրէն ենթարկուած է նաեւ Կապադովկիա, հակառակ անոր որ իր յիշատակութեան չենք հանդիպիր, վասնզի կրնար ըլլալ որ երկրաշարժը պատահած ըլլայ նահանգին Հռոմէական կայսրութեան կցումէն առաջ կամ այն օրերուն, երբ դեռ երկիրը ամրապէս կապուած չէր կայսրութեան։

Փոքր Ասիոյ, բայց մանաւանդ Կապադովկիոյ Արգէոսեան շրջանակին հրաբխային բնոյթը երկար ատենէ ի վեր ծանօթ էր։

«Բոլոր Méandre-ի դրացի երկիրը ականահարուած է հրով եւ ջուրով» կ'ըսէ Ստրաբոն, որուն Կապադովկիոյ հրաբխային գետնին նկարագիրը վերը արդէն մէջ բերուեցաւ։

Լիւդիոյ և Միւսիոյ սահմաններուն վրայ կը տարածուէր ընդարձակ նահանգ մը որ կը կոչուէր Catacécaumène կամ «Հրկիզեալ հող»։

Ստրաբոն կ'ըսէ թէ «հոն հողը փխրուն է եւ տեսքով մոխիրի նման: Լեցուն առատ աղով եւ շատ դիւրավառ: Ապառաժները հոն կը թուին սեւցած՝ կրակի ազդեցութեամբ: Հոն ոեւէ ծառ չ'աճիր, եթէ չէ որթատունկ որ կուտայ խիստ յարգի գինի» (Ստրաբոն, ԺԳ. էջ 628)։

Հոն ցոյց կուտային շատ տեղեր խորխորատներ ուր կը կորսուէին ջուրերը և ճեղքուածներ որոնք կը ծառայէին իբր անցքեր դժոխոց (Charonia քարայրները Քառոնի կամ Պղուտոնի) և որոնցմէ դուրս կը պոռթկային ժահահոտ շոգիներ։

Այս երկրին մէջ էր որ աւանդութիւնը զետեղած էր բնակութիւնը Տիփէոս տիտանին որ բոցեր կը ժայթքէր (Ստրաբոն, ԺԳ. էջ 628 և ԺԲ. 578-579, տես նաեւ գործիս Ա. մասը, էջ 11-13)։

Այնպէս որ Փոքր Ասիոյ մէջ երկրաշարժը սովորական էր և միշտ կը պատահէր։

Սակայն Տիբերիոսի ժամանակ պատահած երկրաշարժի ցնցումը սոսկալի էր, և ամէնէն ահարկուն։ Փոքր Ասիոյ բոլոր արեւմտեան կողմը զգալի եղաւ ան և տապալեց ու աւերակի վերածեց մէկ գիշերուան մէջ Փոքր Ասիոյ 12 ամէնէն գեղեցիկ և ամէնէն հարուստ քաղաքները որոնց անունները կուտայ Տակիտոս (Բ. 47)։

«Այս աղէտը գիշեր ատեն եկաւ, ինչ որ զայն աւելի զարհուրելի դարձուց: Մարդիկ միջոց չունէին ազատելու բաց տեղերու մէջ, վասնզի ամէն կողմէ հողը կը ճեղքուէր: Բազմաթիւ լեռներ կը հարթուէին եւ ուրիշներ կը բարձրանային: Աւերակներու մէջ կրակին ժայթքումը կը տեսնուէր» (Տակիտոս, Բ. 47):

Տիբերիոս Սարտիկէի բնակիչներուն— որոնք ամէնէն աւելի կը տառապէին— ղրկեց 100 միլիոն սեստերտի (sesterce) գումար մը և անոնց ինչպէս նաեւ բոլոր միւս քաղաքներու բնակիչներուն շնորհեց հինգ տարուան տուրքերը։

M. Aletus, հին պրետորը ղրկուեցաւ Ասիա, նպաստները բաշխելու համար։ Երախտապարտ Ասիացիք յետոյ Հռոմի Փօրումին մէջ, Վենիւսի (Աստղիկի) տաճարի առջեւ, կանգնեցին Տիբերիոսի հսկայ արձանը, շրջապատուած 14 ուրիշ արձաններով որոնք կը ներկայացնէին օգնութիւն ստացող քաղաքները (Phlégon, De reb. misab. C. 13)։

Հաւանական է մտածել թէ Կեսարիա և իր շրջակայքն ալ այս համատարած աղէտէն զերծ չեն մնացած և այս առթիւ է որ Մաժակ վերաշինուած Տիբերիոսէն՝ առած ըլլայ «կայսերական» (Կեսարիա) անունը, ինչպէս պատմագիրներէն շատեր կը հաւաստեն, սակայն Prof. N. M. Ramsey (The Historical Geography of Asia Minor էջ 303-304) կը մերժէ զօրաւոր փաստարկութեամբ այս իրողութիւնը և կ'ապացուցանէ թէ այդ անունը տուած է Մաժակին Կլոտիոս կայսրը (41-54) որ վերաշինած է քաղաքը։

Այս վերաշինութիւնը կը զուգադիպի նոյն կայսեր կատարած Կապադովկիոյ և Լիկաւոնիոյ նահանգներու վերակազմութեան, որ ատեն կը շինուին նաեւ Կապադովկիոյ Արքեղայիս գաղութ քաղաքը(1), լեռնային Կիլիկիոյ մէջ՝ Կլոտիապոլիս գաղութը, Լիկաւոնիոյ մէջ Կլոտիօ-Տէրպէ, Կլոտ-Իկոնիում, Կլոտիօ-Լաւստիքիա քաղաքները, ամէնքն ալ կատարուած հաւանօրէն 41ին, նոյնիսկ իր գահակալութեան տարին։

Ինչ որ ալ ըլլայ անուրանալի է որ Տիբերիոս կամ Կլոտիոս՝ Կեսարիան վերաշինած և բարեզարդած են, Հռոմէական քաղաքի մը վայելուչ վիճակին մէջ դնելով զայն։

Հռոմէական տիրապետութեան շրջանին Կապադովկիոյ մէջ շինուած են նաեւ ուրիշ քաղաքներ, կառուցուած են բազմաթիւ շինութիւններ, տաճարներ, ամրութիւններ, կրկէսներ, եւայլն որոնք Հռոմի մեծութեան կը համապատասխանեն։

Հռոմ որ մեծ ուշադրութիւն կ'ընծայէր նաեւ հաղորդակցութեանց միջոցները դիւրացնելու, շինած է նաեւ ճամբաներ Կապադովկիոյ մէջ (տես Ramsey, նոյն, էջ 267-270) որոնք Կեսարիան, նահանգին կեդրոնական քաղաքը յարաբերութեան կը դնէին ծովերու և առեւտրական այլ կեդրոններու հետ։

Շինարարական այս աշխատանքներուն առընթեր, Հռոմ կատարեց մտաւորական և քաղաքակրթական թափանցում մը դէպի Փոքր Ասիա, հոն ներմուծելով Լատին լեզուն, Հռոմէական ներշնչմամբ գրականութիւնը և մանաւանդ արուեստները։

Այսպէս, Ասիա եւս անհաղորդ չմնաց փիլիսոփայական և գրական շարժման, որ Ադրիանոս կայսեր (117-138) շրջանին կը փթթի բոլոր կայսրութեան մէջ, մանաւանդ քաջալերութեամբը այս կայսեր որ իր բոլոր պետութեան մէջ ո՛չ միայն կառոյց հոյակապ շինութիւններ այլ նաեւ քաջալերեց գրականութիւնը և արուեստները, և իր իշխանութեան շրջանը երեւելի ըրաւ տեսակ մը իմաստասիրական և մտաւորական վերածնութեամբ։

(1) Արքեղայիս, երբեմն կը կոչուէր Գարսաւրա, ինչպէս ըսինք վերը։ Հիմա Աքսէրայ կը կոչուի։



Այդ շրջանին կը տեսնուին մտաւորական շարժման նշաններ նաեւ Կապադովկիա, որուն գլուխը կը գտնուէր այս կայսեր ատեն իբր կուսակալ իր ժամանակին ամէնէն նշանաւոր մտաւորականը՝ Փոքր Ասիացի յոյն Արրիանոս որուն վրայ արդէն խօսեցայ (տես էջ 222-223)։

Դիոկղետիանոս կայսեր (284-305) օրով՝ կարծես մտաւորական շարժման ծանրութեան կեդրոնը տեղափոխուեցաւ Արեւելք, վասնզի այս կայսրը Նիկոմիդիոյ մէջ, —ուր կը սիրէր բնակիլ— բացաւ դպրոց մը որ կը վարէր հռչակաւոր հռետոր Լակտանդիոս։

Փոքր Ասիոյ զանազան քաղաքներուն մէջ ալ բացուեցան ուրիշ փիլիսոփաներու ձեռքով դպրոցներ։

Կապադովկիա նոյնպէս անհաղորդ չմնաց իմաստասիրական այս դպրոցներու ազդեցութենէն և նոյն իսկ տուաւ նշանաւոր դէմքեր, որոնք հեթանոս ընկերութեան ապականութիւններուն դէմ ուրիշ բարոյական մը ստեղծելու պէտքը զգացին։

Այս տեսակ ըմբռնումի մը գլխաւոր ներկայացուցիչը կրնանք նկատել Ապողոնիոս Տիանացին (Apollonius de Tyane) որ քրիստոնէութեան Փոքր Ասիա առաջին անգամ մտած օրերուն երեւան եկած է իբր նորանշան երեւոյթ մը։

Պիւթագորեան վարդապետութիւնը՝ որ գետին գտած էր Հռոմի մէջ չկրցաւ երկար ատեն պահել իր նախնական պարզութիւնը։

Ապողոնիոս Տիանացին, Նոր-Պիւթագորեան հռչակաւոր այս փիլիսոփան, ամէն հնարք ի գործ դրաւ, այս անկման դէմ մաքառելու և նախկին վարկը ու փառքը տալու համար այս վարդապետութեան, սակայն չյաջողեցաւ։

Նոր-Պիւթագորեան այս փիլիսոփան ծնած էր Տիանա, Կապադովկիոյ մէջ, քրիստոնէական թուականին սկիզբները, 30-40 թուականներուն, և մեռած է Եփեսոս՝ Ներվաս կայսեր (96-98) իշխանութեան ատեն։

Իր ուսումը առած էր Կիլիկիոյ Տարսոն և Եգէա քաղաքներուն մէջ։

Շատ կանուխէն անիկա յարեցաւ Պիւթագորի վարդապետութեան և ճամբորդեց Փոքր Ասիա, Բաբելոն, և ապա Հնդկաստան, ուր Պրահմանականութեան վարդապետութիւնը ուսումնասիրեց։

Գնաց նաեւ Հռոմ Դոմետիանոս կայսեր (81-96) իշխանութեան ատենները։

Ամէն կողմ կը յորդորէր բարքերու ապականութիւնը թօթափել և կը տարածէր Պիւթագորեան վարդապետութիւնը։

Իր վարպետին օրինակին հետեւելով կը սնանէր միայն ընդեղէնով, կը հրաժարէր գինիէն և կիներէն, կուտար իր ինչքերը աղքատներուն, կ'ապրէր տաճարներու մէջ, կը հանդարտեցնէր ըմբոստութիւնները, և կը դաստիարակէր մարդիկը, քալելով բոկոտն և մազերը երկնցուցած։

Պատմուած է թէ անիկա հրաշքներ ալ կը գործէր։ Կրնայ այս կարողութիւնը իրեն վերագրուած ըլլալ յետսագոյն ժամանակներու մէջ։

Ամէն պարագայի տակ իր ժամանակակիցներէն անիկա կը նկատուէր առհասարակ մոգ մը, կախարդ մը, ինչպէս զինքը կ'անուանէին Ապուլէոս և Որոգինէս, մինչդեռ Կեղսոսի անծանօթ մնացած կ'երեւայ

(Հմմտ. Jul. Jessen. Apollonius von Tyana und sein Biograph Philostratus. Hamburg. 1885)։

Դոմետիանոս կայսրը (81–96) զինքը հալածեց։ Ապողոնիոս մեծ քաջութեամբ հանդուրժեց այդ հալածանքին։

Ապողոնիոս մեռաւ Եփեսոս, ուր հաստատած էր Պիւտագորեան դպրոց մը։

Իր փիլիսոփայական փայլուն հռչակը, բաւական է ցոյց տալու թէ անիկա եղաւ իր ժամանակին ամէնէն արտակարգ մարդերէն մին, իր գիտութեամբ, իր առաքինի կենցաղով և իր պերճախօսութեամբ, ասով հանդերձ անոր վրայ միայն անվաւեր ծանօթութիւններ կան։

Իր կենսագրութիւնը գրած էր Փիլոստրատոս (Philostrate) մօտաւորապէս երկու դար յետոյ իր ժամանակէն։

Ցուլիա Դոմնա կայսրուհին իր Տիանա գտնուած ատեն ըստ Բաւրի տեսութեան, ինքն եղած է Ապողոնիոսի վրայ Փիլոստրատոսի ուշադրութիւնը դարձնողը (տես Baur. Apollonius von Tyanà und Christus. էջ 124)։

Այս կենսագրութեան մէջ Փիլոստրատոս՝ սրբութեան դափնեպսակով մը շրջապատել կուտայ Ապողոնիոսը, որ ատկէ յետոյ մեծ յարգ վայելած է (Zimmerer ՀԱ. 1900 էջ 133)։

Այդ վարքագրութիւնը այնքան լի է առասպելներով որ գրեթէ անկարելի է հոն որոշել ինչ որ ճշմարիտ է։

Իր անունով մեզի հասած 84 նամակները և Ջատագովութիւնը ընդդէմ Դոմետիանոսի, կասկածելի վաւերականութիւն մը ունին (տես Chassang. Le Merveilleux dans l'Antiquité. Apollonius de Tyane. 1882)։

Սակայն իր անունին շուրջը հիւսուած գովեստները պատճառ եղան որ արձաններ և տաճարներ կանգնուին իրեն համար և հեթանոսներ փորձեն իր հրաշքները բաղդատել անոնց հետ որ Քրիստոս կատարած է։

Այսպէս Կարակալլա կայսրը (211–217) անոր անունով դիւցազնարան մը (ἡρῷον, տաճար դիւցազնի մը) կանգնեց, ի Տիանա և երբ դից փառքն աղօտանալու վրայ էր՝ Սեւերոս Աղեքսանդր (222–235) ջանաց Նոր Ողիմպոս մը կազմել և իր առտնին տաճարին մէջ պատուել Ապողոնիոս Տիանացին, Աբրահամը, Որփէոսը, և Քրիստոսը, ինչպէս կը հաւաստէ կայսեր կենսագիրը՝ Լամբրիտիոս։

Ապողոնիոսի պատկերը՝ ներկայացուած իբր մեծարգոյ ծեր մը, կը գտնուէր շատ մը մեհեաններու մէջ, ինչպէս միւս հռչակաւոր սոփեստներունը։

Աւրելիանոս կայսրը (270–275) նոյնպէս մեծ յարգանք ունեցած է դէպի Ապողոնիոս որուն յիշատակին կը պարտին Տիանացիք այն մեղմ վարմունքը որ այս կայսրը հանդէպ իրենց ցոյց տուաւ, այս հռչակաւոր և յարգութեան արժանի անձին ծննդավայրը՝ երբ յամառ պատերազմէ մը յետոյ առաւ՝ Պալմիրայի Զենոբիա թագուհիին դէմ պատերազմի գացած ատեն։

Վոպիսկոս Սիրակուսացի —Աւրելիանոսի կենսագիրը— չափազանց խանդավառուած է այս սրբակեաց անձով, որուն վարքն ալ գրել կը խոստանայ, թէեւ յայանի չէ թէ կատարա՞ծ է իր խոստումը։

Երբ Քրիստոնէութիւնը իր յաղթական ընթացքովը հետզհետէ կը նուաճէր հեթանոս աշխարհը անիկա քրիստոնեայ և հեթանոս մարտընչողներու կողմէ իրենց դատին ի նպաստ գործածուեցաւ։



Ենապիոս փիլիսոփան կ'ըսէ թէ Փիլոստրատոս Ապողոնիոսի կեանքը ներկայացուցած է իբր Աստուծոյ երեւումը մարդկան մէջ, սակայն բուն Փիլոստրատոսի գործին մէջ քրիստոնէութեան դէմ ընդդիմախօսութիւն չկայ, և ոչ ալ նպատակ՝ Ապողոնիոսը համեմատելու Քրիստոսի հետ (Zimmerer ՀԱ. 1900 էջ 133) միայն անիկա պճնուած էր մեծ առաքինութիւններով։

Այնպէս որ քրիստոնեայ եպիսկոպոս մը՝ Սիդոնիոս Ապոլինարիս տակաւին միամտաբար կը հիանայ Փիլոստրատոսի գործին և այն «մեծարգոյ մարդուն» առաքինութեանց վրայ (Նոյն)։

Հերոկլոս՝ Բիւթնիոյ կուսակալը որ սուրով և գրիչով կը կռուէր քրիստոնէութեան դէմ, առաջին անգամ ինքն եղաւ որ Ապողոնիոսը բաղդատեց Քրիստոսի հետ, փաստելու համար թէ հեթանոսութիւնն ալ ունէր իր հրաշագործները և մաքուր բարոյականի առաքեալները։

Ասոր այս համեմատութեան դէմ ուղղուած է Եւսեբիոսի Կեսարիոյ գիտնական եպիսկոպոսին ընդդիմախօսական գրութիւնը որ մեզի հասած է։ Սակայն Եւսեբիոս ինքն ալ կ'ընդունի թէ Ապողոնիոս փիլիսոփայ մըն էր։

Բաւական ուշ է որ քրիստոնեայ մատենագիրներ խստութեամբ դատել սկսան զինքը։

Ցերոնիմոս և Աւգոստինոս զինքն դիւային կախարդ մը հռչակեցին և ուրիշներ անոնց օրինակին հետեւեցան, մինչեւ մեր օրերը, երբ գտնուեցան հետաքննիներ որոնք յարգանք տածել սկսան Կապադովկիացի այս իմաստասէրին իբր «լուսաւոր երեւոյթ մը», ինչպէս անգլիացի աստուածեանք, անոնց հետեւող Նաբոլէոն Ա. և Փիլոստրատոսի նոր գերմաներէնի թարգմանիչը՝ Ed. Baltzer (Rudolstadt. 1883) և ուրիշներ (Zimmerer ՀԱ. 1900 էջ 133)։

Ինչ որ ըլլայ Ապողոնիոս երեւոյթ մըն էր, որ Կապադովկեան երկրին առաջին ցնցումները ցոյց կուտար, և միեւնոյն ատեն երկրին տրամադրութիւնը վեր բարձրացնելու համար հեթանոս անկեալ բարոյականի մը զարշութիւններէն, որոնց մէջ պիտի տուայտէր ժամանակ մը եւս, վասնզի որչափ որ նոյն իսկ առաքելական դարուն մէջ Կապադովկիա մտած էր քրիստոնէութիւնը, սակայն անիկա տակաւին ստորերկրեայ վիճակ մը ունէր հաւանօրէն և ուշադրութիւն գրաւելու հանգամանք չունէր կամ թերեւս շատ լաւ ծածկուած կը զարգանար։

Շատ չյապաղեցաւ սակայն անոր յայտնութիւնը և զարգացումը Կապադովկիոյ մէջ որ նոր հաւատքին մեծ կեդրոններէն մէկը եղաւ և վառարան մը նաեւ քրիստոնեայ նոր գրականութեան, զոր արտադրեցին այս եկեղեցւոյն նշանաւոր ներկայացուցիչները, Նոր–Պղատոնական իմաստասիրական ներշնչման տակ, որ Աղեքսանդրեան դըպրոցէն կը ներարկուէր Կապադովկիա, մասնաւորապէս այն դպրոցին աշակերտներէն ոմանց հոն փոխանցած ուսմամբ և քարոզութեամբ, ինչպէս պիտի տեսնենք։

Այս նոր փթթումը՝ որ Հռոմէական տիրապետութեան տակ կը կատարուէր իր էութեամբը սակայն Հռոմէական չէր, այլ քրիստոնէական և իրեն ներշնչման աղբիւր ունէր Աւետարանները և Ս. Գիրքը։

Իր ներշնչումով և ճառագայթումով բոլորովին տարբեր այս շարժումը, իբր արդիւնք Կապադովկեան եկեղեցւոյ ծնունդի և զար-

գացման, կարելի չէ նկատել մէկ արգասիքը Հռոմի տիրապետութեան որչափ որ ալ անիկա ծնունդ առած և զարգացած ըլլայ պետութեան իշխանութեան տակ և անոր ընթացքին վրայ Հռոմէական պետութեան բացասական կամ դրական դիրքը, իր կատարած հալածանքները կամ ընծայած քաջալերանքները, իրենց կարեւոր անդրադարձութիւնը ունեցած ըլլան, ինչպէս ի ստորեւ պիտի բացատրուի։

## Դ.

## ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ԵԿԵՂԵՑԻԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆԸ

Հռոմէական տիրապետութեան շրջանին Կապադովկիա, երկարատեւ խաղաղութիւն չվայելեց, ինչպէս տեսնուեցաւ, անոր քաղաքական պատմութեան մէջ։

Դէպի Կապադովկիա կատարուած արշաւանքները և մշտատեւ պատերազմները և անոնց հետեւանք՝ աւերածութիւնները բնական է կը խռովէին երկրին կեանքը, ուր նոյնքան խորունկ դեր մը կը կատարէր նաեւ Քրիստոնէութիւնը որ որթի մը պէս կրծել սկսած էր Հեթանոս քաղաքակրթութիւնը իր նոր հայեցողութեամբը ու ձգտումներովը, որոնք երկնային էին աւելի քան երկրային։

Եւ պէտք է ըսել թէ Քրիստոնէական դաւանանքին ազդեցութեան ենթարկուած երկիրներուն մէջ առաջիններէն մէկը եղած է Կապադովկիան, ուր նոյնիսկ Քրիստոսի Ա. դարուն իր նուաճումները կ'ընէր այս նոր կրօնքը։

Հեթանոսներու Առաքեալը Պօղոս, ինչպէս Ոսկեբերան կ'ըսէ (ճառ ԻԹ), —անշուշտ մինչեւ իր օրերը ապրող աւանդութեան մը արձագանգ ըլլալով— Կապադովկիա եւս եկած է և քարոզած։

Պօղոս իր առաջին ճամբորդութեան ատեն Կիպրոսէն Բառնաբասի հետ գնաց Փոքր Ասիոյ Պերգէ (Պամփիւլիոյ մայրաքաղաք՝ այսօր Գարահիսար) քաղաքը, ուր Մարկոս բաժնուեցաւ և Երուսաղէմ դարձաւ։ Պօղոս և Բառնաբաս Պերգէէն անցան Պիսիդիոյ Անտիոք (այժմ Ագշէհիր քաղաքը), —ուր Հրեայ կարեւոր գաղութ մը կար— և եկան Իկոնիոն(= Գոնիա) ուրկէ փախան Լիւստրա (= հիմա Խաթուն Սարայ)(1) և Դերբէ (=հիմա Զոստա)(2)։ (Մելքիսեդեկ եպ. Մուրատեանց, Պատմութիւն Քրիստոնէական Եկեղեցւոյ, 1898, Կալաց, էջ 33)։ Անոնք բոլոր այս քաղաքներուն մէջ ձեռնադրեցին երէցներ և գործեցին հրաշքներ (նոյն) և Երուսաղէմի ժողովին մէջ պատմեցին այն արդիւնքները զորս ձեռք բերած էին իրենց առաքելութեամբ 'ի Փոքր Ասիա։

Պօղոս՝ Անտիոքի ժողովէն յետոյ Շիղայի հետ դարձաւ ի Փոքր Ասիա (Գործք Առաքելոց, ԺԵ. 22–40)։

Լիկաոնիոյ մէջ՝ իր հետն առաւ Տիմոթէոսը, և Փռիւգիայէն անցնելու ժամանակ, հոն թողուց իր հաւատարիմ պաշտօնակիցներէն մին՝ Եպափրաս կամ Եպափրոդիտոսն որ հիմնադիրն եղաւ Կողոսացւոց, Հերապոլսեցւոց և Լաւոդիկեցւոց ծաղկեալ եկեղեցիներուն (Կող. Ա. 7, Դ. 12, Փիլ. Թ. 25)։

Պօղոս սկսաւ իր երրորդ ճամբորդութիւնը այցելելով Փռիւգիա, Տիանա և Գաղատիա։

Ինչպէս կը տեսնուի չի յիշուիր Կեսարիան, սակայն բոլոր շրջակայքը շրջած և Փոքր Ասիան այսպէս քանիցս ճեղքած միջոցին անկարելի էր որ Պօղոս հանդիպած չըլլար նաեւ նահանգին կեդրոնական այս քաղաքը։ Արդարեւ Գործք Առաքելոցը թէեւ ուղղակի Կապադովկիա կատարուած առաքելական քարոզութիւններու խօսքը չ'ըներ, սակայն բոլոր դրացի շրջանակի երկիրներուն յիշատակութենէն և Պետրոսի Կաթողիկեայ թուղթին առ «ընտրելոց նժդեհից(1) որ ի սփիւռս Պոնտացւոց, Գաղատացւոց, ԿԱՊԱԴՈՎԿԵՑԻՈՑ, Ասիացւոց եւ Բիւթանացւոց» (Ե. 2) ուղղեալ ըլլալէն շատ պարզօրէն կարելի է հետեւցնել թէ Կապադովկիա ալ Քրիստոնէութիւնը քարոզուած է և հոն տեղերը կային եպիսկոպոսներ որոնց կը յանձնարարէ Պետրոս արածել հօտը որ անոնց յանձնուեցաւ իրմով(2)։ Արդարեւ Եւսեբիոս կը հաստատէ (Եկեղ. Պատմ. Բ. գ. 1) որ Պետրոս աւետարանած է Հրէից որ սփռուած էին Պոնտոս, Գաղատիա, Բիւթանիա, Կապադովկիա, «Ասիա» նահանգը և անոնց ուղղած է իր առաջին թուղթը։

Աւանդութիւնը Պետրոսին կը վերագրէ 42ին Ամասիոյ Նիկիտ կամ Փիթիմոս եպիսկոպոսի ձեռնադրութիւնը և շատ մը քաղաքներու մէջ եկեղեցիներու հաստատութիւնը։

Անուանի կանոնագէտ Յովսէփ Պարսիլաքի յունածէս եպիսկոպոսը Մեծ-Վարադինի, գրած է թէ «Առաքեալն Պետրոս Կապադովկիոյ ամէն քաղաքներ կարգեց եպիսկոպոսներ», ինչ որ կը նշանակէ թէ Քրիստոնէութիւնը զարգացած էր։

Նոյնպէս կ'ըսուի թէ Անդրէաս քարոզած է Կապադովկիոյ մէջ (Նիկեփոր, Եկեղ. Պատմութիւն, Բ.) և հոն նահատակուած է Մատթէոս։ Աւանդութիւնը Փոքր Ասիա կ'առաջնորդէ նաեւ Բարթուղիմէոսը և Թադէոսը։

Թադէոսի (Ղեբէոս կամ Յուդա Յակոբեան) համար աւանդութիւնը կ'ըսէ թէ Հայաստանը լուսաւորելէ առաջ Կապադովկիոյ և Փոքր Հայոց կողմերը եկած է և քարոզած՝ Սեբաստիոյ մէջ, հաստատած է Կեսարիոյ եկեղեցին և Թէոփիլոս Անտիոքացիականաւոր անձը հովիւ նշանակած և ապա անցած է Մեծ Հայք (Օրմանեան, Ազգապատում, էջ 25)։

«Պոնտական վիճակը Յուդա Թադէի ընծայուած է, եւ անկէ ճաւասոյ ճշմարտութեան լոյսն, եւ բարեպաշտութեան եւ սրբութեան սերմերն ընդունած ըլլալնին կ'աւանդեն Վալագրիոս, Ստրաբոն եւ Բիլլրմուն» (Փոլիթի, Յիշատ. Եկեղ. Հտ. Ա. էջ 402, Ալեքսանդրեան, Պատմ. Սեբաստիոյ, էջ 52)։

---

[1] Կը գտնուէր հին Իսաւրիոյ նահանգին մէջ։ (տես Ramsey, նոյն էջ 332 և 394)։

(2) Ստրաբոն անոր վրայ խօսած է (տես վերը էջ 212)։

(1) Այս նժդեհները որոնց կ'ակնարկէ Պետրոս գաղթական հրեաներն են, որոնք այս աշխարհներուն մէջ կը բնակէին։

(2) «Արածեցէք որ ի ձեզ հօտդ է, այս է որ ձեզ աւանդեցաւ հօտդ Աստուծոյ ինեւ»:

«Պոնտական վիճակը» իր մէջ կը բովանդակէր Կապադովկիան, Փոքր Հայքը, Գաղատիան, Պափլագոնիան, Հոնորիատէսն և Բիւթանիան ըստ Ալեքսանդրեան Անդրէաս Գերապայծառի տես (Պատմ. Սեբաստիոյ, էջ 52)։

Այս տեղեկութիւնները՝ մեծ մասամբ աւանդութիւն կամ զրոյց, հեռու են վաւերականութենէ, սակայն որքան ալ երկրայելի ըլլան աւանդութիւնները, անոնք չեն կրնար բոլորովին անարժէք նկատուիլ, երբ անոնք քիչ շատ կը հաստատուին գրաւոր յիշատակարաններով, ինչպէս է այս պարագային, երբ փաստեր ունինք թէ Կապադովկիան ունէր Ա. դարուն իսկ քրիստոնեայ բնակչութիւն մը։

Հետեւաբար շատ տարակոյսի տակ չի կրնար ձգուիլ սա իրողութիւնը թէ Քրիստոնէութիւնը նոյնիսկ իր արշալոյսին մուտք գտած էր Կապադովկիա, միայն մութը կը մնայ շատ բան, ինչպէս կը հաւաստէ Zimmerer, (տես ՀԱ. 1900, էջ 133) Քրիստոնէական տարածման այդ նախընծայ շրջանը լուսաբանելու համար։ Այս յայտարարութիւնը կ'ընէ գերման գիտունը այս նպատակով մի առ մի պրպտելէ յետոյ Ս. Հայրց գրութիւնները որոնց մէջ ինքն շատ քիչ բան գտած է հաղորդուած աշխարհագրականօրէն և պատմագրօրէն կարեւոր։ Գլխաւորաբար Նամակներու մէջ տեսած է այս մասին շահեկան տեղեկութիւններ անձերու և տեղերու համար։

Կապադովկեան եկեղեցւոյ պատմութեան մասին կը յիշուին երկու աշխատութիւններ որոնք սակայն անբաւական են լուսաբանելու առեղծուածը (տես նոյն)։

Այս երկու գործերն են 1. Լեւիտիսի (Levidis) Եկեղեցական Պատմութիւն Կապադովկիոյ ('Ἐκκλησιαστικὴ ἱστορία τῆς Καππαδοκίας) «որ աւելի հայրենասիրական շունչով մը գրուած է քան քննադատական»։ Եւ 2. Ա. Հառնակի (A. Harnak) Chronologie des Altchristhichen Litteratur bis Eusebius (Leipzig 1897) ուր հաւաքուած են փոքրասիական հնագոյն եպիսկոպոսաց ցանկերը, վարդապետաց և մատենագրաց ժամանակագրութիւնը, խօսուած է Փռիւգիոյ եւ Ասիոյ մէջ եղած Մոնտանեան և Զատկի տօնի վէճերուն մասին մինչեւ Իրինէոս՝ Քրիստոնէութեան շարժման առաջին երկու դարերուն մէջ։ Սակայն հակառակ Ա. Հառնակի կատարած լուրջ ջանքերուն կարելի չէ իր գործէն որոշ գաղափար մը ստանալ Քրիստոնէութեան տարածման շրջանին վրայ (Zimmerer)։

Միայն Ռամսէյ է որ իր հռչակաւոր գործին մէջ (Ramsey, The church in Roman Empire before A. D. 170, London, 1893, էջ 10, տես նաեւ էջ 224) համառօտ բայց պայծառ գծերով ստուերագրած է Քրիստոնէութեան մուտքն ի Փոքր Ասիա, որ նաեւ այս տեսակէտով ազգերու կամուրջ եղած է դէպի արեւմուտք։ «Գլխաւոր գիծը, կ'ըսէ
«Ռամսէյ, որուն ուղղութեամբ զարգացաւ նոր կրօնքը, էր այն՝ որ ասորական
«Անտիոքէն կը տանէր՝ Կիլիկեան Դռներէն եւ Լիւկաւոնիայի մէջէն՝ դէպի Եփե-
«սոս, Կորնթոս եւ Հռոմ։ Երկրորդական գիծ մը կ'երթար ցամաքին ճամբուն
«գծով Փիլադելփիա, Տրովա, Փիլիպպէ եւ Եգնատեան ճամբով դէպի Պրինտիզի
«եւ Հռոմ, ուրիշ մը դէպի հիւսիս՝ Դռներէն Տիանայի եւ Կապադովկեան Կե-
«սարիոյ վրայէն դէպի Ամիսոս Պոնտոսի, որ Սեւ Ծովուն մեծ նաւահանգիստն
«էր, եւ որուն վրայէն կ'երթար Կեդրոնական Ասիոյ առեւտուրը դէպի Հռոմ։
«Կապադովկիա՝ եկեղեցեաց հնագոյն հիմնարկութիւնը (Ա. Պետրոս ա. 1.)
«Նոյնպէս Պոնտոս (Ա. Պետրոս ա. 1. Պլինիոս առ Տրայանոս՝ 96) պարտական



«են հաղորդակցութեան այս գիծին»։ Ռամսէյ Ամիսոսը կը համարէ հիւսիս-արեւելեան Փոքր Ասիոյ առաջին քրիստոնէական կայանը, շուրջ 65–75 (Քր.է յետոյ) տարիներուն։

Ասով հանդերձ խարխափելով է որ կը հասնինք եզրակացութիւններու, քանի որ կարելի չէ որոշ տեղեկութիւններ ունենալ քրիստոնէութեան տարածման նախնական շրջանի մասին, երբ անիկա գաղտնի կը գործէր և հալածանքի ենթակայ էր։ Հետեւաբար այդ առաջին օրերուն մասին մեր ծանօթութիւնները զրոյցներու և աւանդութիւններու շրջանակէն դուրս չեն ելլար,

Ինչպէս Առաքելական քարոզութեանց համար միայն աւանդութիւններ ունինք, Կապադովկեան Եկեղեցւոյ առաջին հովիւներուն համար եւս մեր գիտցածները աւելի չեն։

Այսպէս, կազմուած է Թադէոս Առաքեալին յաջորդող եպիսկոպոսներու ցանկ մը որուն վաւերականութիւնը չափազանց կասկածելի է, սակայն իբր հետաքրքրական կը ներկայացնեմ։

Թադէոսի յաջորդած են ի Կեսարիա, իբր թէ, հետզհետէ.

41 — 65 Թէոփիլոս Անտիոքացի
65 — 78 Երուանդ Գամրաց Նահանգէն
78 — 109 Սիւքիանոս Կեսարիոյ Նահանգէն
109 — 122 Միհրեւան կամ Միհրան Եդեսացի
122 — 149 Ատրիկոս Սեբաստացի
149 — 151 Վլասիոս
151 — 161 Վահան
161 — 193 Ագրիանոս
193 — 218 Մեհրուժան
218 — 227 Պինտանոս
227 — 237 Ալեքսանդր
237 — 249 Արքեղայոս
249 — 277 Պալմելիանոս կամ Ֆալմելիանոս
277 — 292 Կղեմիոս
292 — Ղեւոնդիոս

Սակայն զրոյցները իրարու համաձայն չեն, վասնզի ինչպէս Zimmerer կ'ըսէ, զրոյցը Կապադովկիոյ առաջին եպիսկոպոս կ'ընէ Ղունկիանոս (Longinus) հարիւրապետը՝ որ հաւատաց Քրիստոսի անոր խաչելութեան պահուն։ Բոլլանդեանք երկու Ղունկիանոս կը զանազանեն, այսինքն հասարակ զինուոր մը և հարիւրապետ մը։ Յովհաննէս Աւետարանիչ (ԻԹ. 34) ալ կ'ըսէ որ զինուորներէն մին էր որ բացաւ Քրիստոսի կողը, ուստի ո՛չ թէ հարիւրապետը։ Արդ Ղունկիանոս զինուորը Իսաւրիացի է կ'ըսուի, ուստի հայրենակից հարիւրապետին, որ յունական Յայսմաւուրքին համեմատ՝ Տիանայի մօտ Սանդրալէս կամ Ադրալէս անուն տեղէն էր, և Յարութիւնէն յետոյ եկած իր հայրենիքը, աւետարանած, և ամբաստանուելով Տիբերիոս կայսեր (14-37) առջեւ գլխատուած է։ Իր պատկերը յաճախ կը տեսնուի նկարուած քարայրներու որմանկարներուն մէջ ('ի Գէօրէմէ և այլ) մեծ մասամբ ձիու վրայ։ Հարիւրապետին այս ձիաւոր պատկերները կը յիշէ նաեւ Գրիգոր Նիւսացի՝ Ս. Բարսեղի եղբայրը (Թուղթ ԺԳ. 391)։ Ոսկեբերան կ'ապահովցնէ որ իր ժամանակը կը ցուցնէին Ղունկիանոսի նահատակութեան տեղը (Մեկն. Մատթէոսի, ճառ ՁԹ. առ Մատ-

*թէոս Թ. 13)։ Սուրբին գլուխը Պիղատոսի հրամանաւ Հռոմ տարուեցաւ։ Իր նահատակութեան յիշատակն է Հոկտ. 16։*

*Թէ որ աստիճան ճիշդ էր թէ Կապադովկեան Եկեղեցին այսքան կանուխ կազմակերպուած էր, խնդրական է անշուշտ, սակայն կարելի է ապահովութեամբ ըսել թէ արդարեւ Կապադովկիան այն երկիրներէն մին է ուր ամէնէն կանուխ Քրիստոնէութիւնը քարոզուած է։*

*Սակայն որչափ երեւոյթները ցոյց կու տան շատ արմատացած և զարգացած չէր տակաւին, Ա. դարուն, թէեւ ամէն կերպով երկիրը պատրաստ էր ընդունելու սերմերը նոր կրօնին բարոյականին՝ արդէն իսկ հեթանոս ընկերութեան ապականութիւններուն դէմ ուրիշ բարոյական մը ստեղծելու պէտքը զգալի դարձած ըլլալով, եթէ ոչ զանգուածներու գէթ իմացականապէս առաջադէմ անհատներու մէջ, ինչպէս էր օրինակի համար Կապադովկիոյ մեծ զաւակներէն մին Ապողոնիոս Տիանացին, Նոր Պութագորեան փիլիսոփան, որ կ'ուզէր մաքուրլ բարքերու անկման դէմ (տես վերը էջ 235– 237)։*

*Ամէն պարագայի մէջ սակայն քրիստոնէութիւնը՝ Ա. դարուն Կապադովկիոյ մէջ ուշադրութիւն գրաւելու հանգամանք ստացած չէր կամ թերեւս շատ լաւ ծածկուած էր, մինչ Տակիտոս կը վկայէր թէ անիկա ամէն կողմ Հռոմէական կայսրութեան մէջ կը տարածուէր։*

*Միայն ասով կրնար մեկնուիլ Ներոն* (54 – 68) *և Դոմետիանոս* (81 – 96) *կայսերու հալածանքներէն Կապադովկիոյ շատ նեղուած չըլլալը* (Zimmerer), *թէև անոնց հալածանքները ընդհանրական հանգամանք ունեցած ըլլան արդէն։ Սակայն Բ. դարուն սկիզբը, Տրայիանոս կայսեր* (98 - 117) *ատեն, մանաւանդ* 106 *թուականէն յետոյ հալածանքը սաստիկ եղաւ, ինչ որ կը հաստատէ թէ քրիստոնէութիւնը զգալի ուժ մը դարձած էր այլեւս Կապադովկիոյ մէջ և պաշտօնատարներու և զինուորներու մէջ իսկ գետին գտած էր, ինչպէս վկայաբանութիւնք կը հաստատեն։*

*Պլինիոս կրտսեր, որ մատենագիր մըն էր և միեւնոյն ատեն պաշտօնատար մը (Բիւթանիոյ կուսակալ), կը պատմէ թէ* «Քրիստոնէութիւնն մեծ յառաջդիմութիւն ըրած էր Փոքր Ասիոյ մէջ եւ քաղաքներէն գիւղերու մէջ տարածուած: Լքուած էին կռոց մեհեաններն, դադրած էին չաստուածոց զոհերն եւ շատ տեղեր ընդհատուած էին հանդէսները»: *Սակայն Պլինիոս իբր լրջամիտ պաշտօնատար, և ոչ մի ծանր ոճիր կը վերագրէ քրիստոնէից, և կը գրէ կայսեր թէ իրենց միակ ոճիրն իսկ համարուի իրենց քրիստոնեայ ըլլալը և սակայն այդ մասին իսկ անմեղ են, զի ոչ մէկ յանցանք գործած են։ Տրայիանոս կը պատասխանէ թէ՝ պէտք է զգուշանալ խաղաղ քրիստոնեաները հալածելէ և միայն մահուան դատապարտել զանոնք այն պարագային որ ամբաստանուին և մերժեն զոհ մատուցանել աստուածներուն և խունկ ծխել կայսեր պատկերին առջև։ Եւ ինչպէս կ'երեւայ քիչ չէր թիւը անոնց որոնք քաջութեամբ կը մերժէին ատիկա։*

*Եւ որովհետև հալածանքն գլխաւորապէս կեդրոնացած էր Փոքր Ասիոյ մէջ, դիւրին է հետեւցնել թէ Բ. դարուն սկիզբը բուռն թափ մը ստացած էր քրիստոնէութեան զարգացումը այս շրջանակին մէջ։*

*Այս հալածանքին ժամանակ կը նահատակուի օրինակի համար Ս. Յակինթոս Կեսարացի, որ Տրայիանոս կայսեր արքունի սպասաւոր-*



*ներէն էր, և այս պատճառով* Cubicularius (= *սենեկապետ*) *յորջորջումը կը կրէր։*

*Ադրիանոս կայսրը* (117 - 138) *շարունակեց իր նախորդին՝ Տրայիանոսի հալածանքն, սակայն մի քանի քրիստոնեայ ջատագովներու իրեն ուղղած գիրերէն և մասնաւորապէս Ասիոյ կուսակալներէն, ստացած տեղեկութիւններէն ազդուած, հրովարտակ մը հանեց, որով կը հրամայէր քննել անաչառութեամբ և պատժել այն զրպարտիչները, որոնք ստութեամբ կը ջանային տանջանքներու մատնել անմեղ քրիստոնեաները։ (Մելք. եպիսկ. Մուրատեանց,* Պատմ. Քրիս. Եկեղ. *էջ* 64 – 65)։

*Անտոնինոս Պիոսի* (138 – 161) *իշխանութեան ատեն քրիստոնէութիւնը աւելի մեծ զարգացում կը գտնէ, վասնզի պետական հալածանքը կը դադրի, թէև ժողովուրդը Փոքր Ասիոյ մէջ պատահած սոսկալի երկրաշարժները արդիւնք համարելով աստուածներու վրէժխնդրութեան՝ կը հալածէ քրիստոնեաները։*

*Անտոնինոս Պիոս այս առթիւ հրովարտակ մը կը հրատարակէ Ասիոյ քրիստոնէից համար ուր կը դատապարտէ զանոնք հալածողները և կ'ըսէ թէ* «Եթէ ոք յանձնառի մեղադրել քրիստոնեաներն, միայն քրիստոնեայ ըլլալնուն համար, թո՛ղ մեղադրեալն ազատուի եւ ամբաստանեալը պատժուի»:







ԱՆՏՈՆԻՆՈՍ ՊԻՈՍ ԿԱՅՍԵՐ (138 – 161) ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ՊՂՆՁԱԴՐԱՄԸ
(Տպուած Կեսարիոյ փողերանոցին մէջ)

Մէկ կողմը՝ կայսեր դիմանկարը եւ միւս կողմը հաւանօրէն Կեսարիոյ քաղաքին կամ Կապադովկիոյ երկրին պաշտպան դիցուհին որ մէկ ձեռքը բռնած է Հռոմէական լեգէոններու դրօշը (Vexillume) եւ միւս ձեռքը՝ անօթ մը՝ իբր կայսեր ընծայաբերութիւն եւ ոտքին քովը ունի Արգէոս լեռը:
(Պր. Բարսեղ Օհանեանի հաւաքածոյէն յատկապէս նկարուած)

*Իր յաջորդին Մարկոս Աւրելիանոսի* (161–181) *օրով սակայն հալածանքը կը վերսկսի և իր իշխանութեան շրջանին Կապադովկիոյ Նազիանզ քաղաքին մէկ արուարձանին մէջ կը նահատակուին համածին երեք եղբայրներ՝ Պեսիպպոս կամ Սպեւսիպպոս, Ելասիպպոս կամ Ելեւսիպպոս, Մեսիպպոս կամ Մելասիպպոս, երեքն ալ Պառնասոսցի նշանաւոր ձիաբոյծներ, որոնք իրենց Լէոնիլլէ մօր խրատով քրիստոնէութիւնը ուսան Մակար Անտիոքացիէն և Զեւս Նեմեսիոսի* (Zeus Nemesios) *արձանը խորտակեցին։*

*Այս բոլորը բաւական չեն սակայն մեզի համոզելու թէ Կապադովկիոյ մէջ Քրիստոնէութիւնը Բ. դարուն իսկ շատ ամուր կազմա-*

կերպութիւն մը ունէր, վասնզի նոյնիսկ աւանդութիւնը Կեսարիոյ եպիսկոպոսներու յիշատակութիւն չունի Ղունկիանոսէն յետոյ որուն յաջորդները որոնք ըլլալը մինչեւ Թէոկրիտոս անծանօթ կը համարէ Zimmerer, հակառակ Հայ Եկեղեցւոյ աւանդութեան։

Թէոկրիտոս կը յիշուի իբր նզովողը Բարսակիս (Barsakis) սարրին որ Վալենտինոսի հետեւող մըն է (Zimmerer)։

Բայց անուրանալի է որ Փոքր Ասիան ունէր մեծ թուով Քրիստոսի հետեւողներ, և նոյնիսկ աղանդաւորական շարժումներ ծայր տուած էին։ Այսպէս Փռիւգիոյ մէջ ծագած էր Մոնտանեան աղանդը, որուն հիմնադիրն է Մոնտանուս Պարակլէտոս (Մխիթարիչ, Montanus Parakletus)՝ Պեպուզիայի(1) եպիսկոպոսը, Հառնակի քննութեանց համեմատ երեւան ելած է 157ին (Zimmerer)։

Մոնտանուս կը կարծէր թէ՝ ինքն կոչուած էր Հոգին Սուրբէն, մաքրել քրիստոնէական բարոյականը իր չափազանց խիստ վարդապետութեամբ. կը դատապարտէր երկրորդ ամուսնութիւնը, հալածանքէն փախուստը, կը բազմապատկէր ծոմապահութիւնները, կ'արգիլէր վերստին Եկեղեցւոյ ծոցը ընդունիլ այն քրիստոնեաները, որոնք վախէն թողած էին իրենց հաւատքը և հեթանոսութեան յարած (Մեղք. եպ. Մուրատեան, նոյն, էջ 87)։

Այս հերետիկոսութեան դէմ ելաւ Կապադովկիացի Զոտիկոս Կումանացի (Կոմանացի)(2), բայց Զոտիկոս որուն օգնականն էր Յուլիան Ապամէացին, չկրցաւ համոզել Մոնտանեանները։

Այսպէս, Քրիստոնէութիւնը տակաւին զանգուածներու կրօնը չդարձած և հալածանքներու առարկայ, իբր ըմբռնում և հասկացողութիւն զանազան ուղղութիւններ կ'առնէր, և այդ շարժումներուն մէջ Կապադովկիա դեր մը կը կատարէր։ Սակայն ասով հանդերձ միշտ պէտք է նկատի ունենալ թէ, հակառակ հոն կատարուած վկայութիւններու յիշատակութիւններուն, Քրիստոնէութիւնը շատ արմատացած չէր դեռ Կապադովկիոյ մէջ և դանդաղ կ'առաջանար։

Նոյնիսկ ինչ ինչ դէպքեր յետնագոյն ժամանակներու մէջ կրած փոփոխութիւններով և այլայլումներով մեզի հասած են, այնպէս որ կարելի չէ վստահօրէն ըսել թէ իրապէս քրիստոնէական հաւատին ծաւալումին ուղղակի արդիւնքներն են։ Մինչեւ իսկ տարակոյս կը ծնի թէ յետոյ ստեղծուած պատմութիւններ են երկիրը վաղուց քրիստոնեայ ցոյց տալու համար։

Այսպէս Դիոն Կասիոս (Հռոմէական Պատմութիւն, ԾԵ. 23) կը պատմէ որ Հռոմէական «Շանթահարաց» կամ «Շանթաձիգ» լեգէոնին — որուն կեդրոնը Մելիտինէի նահանգն էր — մաս կազմող քրիստոնեայ զունդին(3) աղօթքով էր որ Մարկոս Աւրելիոս կայսրը (161-180) ստացաւ

---

(1) Պեպուզիա (այժմ Եանըզ Էօրէն) կը գտնուէր Փռիւգիոյ մէջ (տես Ramsey, Asia Minor, 137, 151)։

(2) Մեղք. եպ. Մուրատեան, (Պատմ. Քր. Եկղ. էջ 90) զայն կը ներկայացնէ Պամփիւլիոյ Կոմանա քաղաքէն և հոն նահատակուած։ Հայ աւանդութիւնք զայն կը ներկայացնեն Կեսարիոյ եպիսկոպոս։ (Ազգապատում, էջ 41)։

(3) Հաւանօրէն Մալաթիայէն վասնզի Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Ե. Դ.) կ'ըսէ թէ Մելիտինէի զունդը՝ ամէնն ալ քրիստոնեայ էին։



յանկալի անձրեւը և Քուադրայ վրայ յաղթութիւնը (174 Քր.է յետոյ) Կապադովկիայէն էր «Մելիտինէ կոչուած զօրագունտէն»։

Հռոմէական բանակը պաշարուած էր Դանուբի վրայ և սաստիկ ծարաւէն կը նեղուէր, երբ իբր թէ խումբ մը քրիստոնեայ զինուորականներ ծնրադիր աղօթքով կայսեր աչքին առջեւ երկինքէն անձրեւ կ'իջեցնեն և կ'ազատեն կայսրը և բանակը։ Այս դէպքը նկարագրած է քրիստոնեայ ջատագով մը Ապողինարիոս։ (տես Paul Allard, La persécution de Dioclétien, Հտ. Բ. էջ 307, Եւսեբիոս, Դպ. Ե. ե. Տերտուղիանոս, Ջատագով. Ե.)։

Հեթանոս մատենագիրներ, այս դէպքը մերթ Մարկոս Աւրելիոսի աղօթքին կ'ընծայեն, մերթ Առնուփիս Եգիպտացի կախարդին դիւթութեանց։ Կայսեր անձնական կարծիքը կը տեսնենք դրամի մը վրայ, ուր դրոշմուած է Արամազդ շանթահարելով բարբարոսները։ Բայց քրիստոնեայք այլազգ կը մտածէին։ Արդէն Կղաւտիոս Ապողինարիս և Տերտուղիանոս քրիստոնեայ զինուորներու աղօթքով փրկուած է կ'ըսեն կայսրը, զոր յետոյ կը կրկնեն Որոսիոս, Գրիգոր Նիւսացի, Հերոնիմոս և վերջապէս Դիոն Կասիոսի համառօտողը Քսիփիլինոս, վերջինը նշանակելով նոյն լեգէոնը «շանթահարող»։ Հիմա առ հասարակ ընդունուած է որ «շանթաձգող լեգէոն» (legio fulminatrix) գոյութիւն ունեցած չէ. բայց կար Ներոնէն՝ թերեւս նաեւ Օգոստոսէն ի վեր «շանթաձգեալ «լեգէոն» մը (legio fulminata) և այն՝ ԺԲ. լեգէոնը որ նաեւ «հին» (antiqua) կը կոչուէր։ Շանթահար կը կոչուէր անշուշտ վասնզի զրահին վրայ շանթանշան կար (Tharax fulminatus արդեօ՞ք) (հմմտ. F. H' Kraus, Real-Encyclopädie der Christl. Alterthümer, Freiburg, 1886)։

Ահա պատմութիւն մը որ հաւանօրէն այլայլումներու ենթարկուած է և հեթանոս ու քրիստոնեայ մատենագիրներ իրենց 'ի նպաստ մեկնած են։ Մասնաւորապէս քրիստոնեայ մատենագիրներ անով ուզած են Կապադովկիան ստուար քրիստոնէութեան որրանը ցոյց տալ, ինչ որ տարակուսելի կը թուի, թէեւ պէտք է ըսել թէ արդէն Դ. դարուն սկիզբէն 202էն յետոյ մասնաւորապէս, երբ Սեպտիմոս Սեւերոս կայսեր (193-211) հրամանով հալածանքը կ'առնէ ընդհանուր հանգամանք և կը հետապնդուին բոլոր քրիստոնեաները և կը ջարդուին անոնք զանգուածային կերպով (Մեղք. եպ. Մուրատեանց, Պատմ. Քրիս. Եկեղ. էջ 85), Կապադովկիոյ Եկեղեցին աւելի կ'ամրապնդուի վասնզի ո՛չ միայն հոն կը նահատակուին Թէոպեմպոս և Թէոտադէ վկաները, Կղաւտիոս Հերմինիանոսի (որուն կինը քրիստոնեայ էր) կուսակալութեան ատեն, այլ այս կայսեր հալածանքները պատճառ կ'ըլլան որ Կապադովկիոյ Եկեղեցին հաղորդակցի Աղեքսանդրեան դպրոցին հետ, վասնզի Աղեքսանդրիոյ Ընծայարանին հիմնադիր Պանտէնուսի (180-216) մեծանուն աշակերտը՝ Կղեմէս Աղեքսանդրացի 202ին ապաստանեցաւ Կապադովկիա, ուր անշուշտ ունեցաւ իր քարոզչական գործունէութիւնը մինչեւ որ դարձաւ իր ծննդավայրը։ Ան այսպէս կապեր հաստատեց Կապադովկիոյ հետ և Աղեքսանդրեան գիտութիւնը գրեթէ ճիւղ մը ունեցաւ հոն՝ այդ նշանաւոր վայրը։

Նոյնպէս Կապադովկեան Եկեղեցին յարաբերեցաւ Երուսաղէմի Եկեղեցիին հետ, վասնզի այս վերջինին եպիսկոպոսը՝ Աղեքսանդրոս

*երկար ատեն բանտարկեալ մնաց Կեսարիա, և հոն վկայուեցաւ* 251*ին*(1)։

*Հետեւաբար տարօրինակ պէտք չէ թուի երբ Կապադովկիոյ քրիստոնէացման գործը հսկայական քայլեր կ'առնէ Գ. դարէն սկսեալ և հոն երեւան կուգան Ընդհանրական Եկեղեցւոյ համար ուշագրաւ դէմքեր։*

*Մասնաւորապէս Սեպտիմոս Սեւերոսի մահէն յետոյ երբ Կարակալլա* (211-217), *Հելիգոբալ* (218-222) *և Ալեքսանդր Սեւերոս Բ.* (222–



ՍԵՊԴԻՄՈՍ ՍԵՒԵՐՈՍ ԿԱՅՍԵՐ (193 – 211) ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ԴՐԱՄԸ
(Կեսարիոյ փողերանոցին մէջ հատուած, որ կը գտնուի Բրիտանական թանգարանը)

Արգէոսի գագաթը կանգնած է Աստուծոյ մը կամ աստուածացեալ կայսեր մը արձանը, իսկ Արգէոս յենած երկու սիւներու վրայ, իր ներքեւը ունի տաճար մը: Այդ դրամը հատուած է հաւանականաբար 201 – 202 թուականներուն եւ կրնայ կարծիք մը տալ Կեսարիոյ փողերանոցին կատարելագործեալ վիճակին վրայ:

(Պր. Բարսեղ Օհանեանի հաւաքածոյէն յատկապէս նկարուած)

235) *յաջորդաբար Հռոմի գահը կը գրաւեն, հակառակ իրենց մոլի և անոգորոյն նկարագիրին չեն զբաղիր քրիստոնեաններով և այս պատճառով Նորակազմ եկեղեցական համայնքները գոնէ կարճատեւ խաղաղութիւն մը կը վայելեն, և կը զարգանան։*

*Կապադովկիոյ մէջ ի Նէոկեսարիա, այդ ժամանակ է որ կը ծաղկի Գրիգոր Սքանչելագործ՝ որուն վարքը գրած են իր հայրենակիցները՝ Գրիգոր Նիւսացի և Փիրմիլիանոս Կեսարացի։*

*Գրիգոր Սքանչելագործ՝ Նէոկեսարիոյ (Պոնտոսի) եպիսկոպոսը, ծնած էր հոն* 210*ին և հեթանոս միջավայրի մէջ մեծցած։ Նախ հետեւած էր հռետորութեան, և հռոմէական իրաւագիտութեան։*

*Ցետոյ գացած է Պաղեստինի Բերիտոն քաղաքը ուր հռոմէական իրաւաբանութեան հռչակաւոր լսարան մը կար, սակայն ճամբան Պա-*

(1) *Հայ աւանդական ցուցակի մը համաձայն Աղեքսանդր վերոյիշեալ Ջոթիկոս Կումանացիէն յետոյ Կեսարիոյ եպիսկոպոս ներկայացուած է* (Ազգապատում, *էջ* 41) *ինչ որ անհաշտ է ժամանակագրութեան, վասնզի Աղեքսանդր ժամանակով աւելի յետոյ է քան Փիրմիլիանոս որ* 232*ին Կեսարիոյ եպիսկոպոս էր, մինչ ցուցակը զայն աւելի առաջ կը նշանակէ։*



*ղեստինի Կեսարիան* (*=Գազա*) *քաղաքը ճանչցած է Որոգինէսը*(1), *և մեծ եռանդով սկսած է իմաստասիրական ուսումներով զբաղիլ։*

*Հինգ տարի յետոյ երբ Մաքսիմիանոսի հալածանքներուն պատճառով Որոգինէս ապաստանեցաւ Կապադովկիա, Գրիգոր անցաւ Ալեքսանդրիա և հոն շարունակեց իր ուսումը։*

*Ցետոյ Կեսարիոյ Փիրմիլիանոս եպիսկոպոսին հետ դառնալով իր հայրենիքը, կատարելագործեց իր ուսումը և մկրտուեցաւ* 239*ին*(2), *և արդէն* 240*ին իր հայրենի քաղաքին եպեսկոպոս եղաւ ակամայ և ստիպումով, Ֆեդիմոս* (Phaidimos) *Ամասիոյ եպիսկոպոսին ձեռնադրութեամբ։*

250*ին Դեկոսի հալածանքին ատեն խոյս տուաւ, հաւատացեալներու բազմութեան մը հետ։*

*Ս. Բարսեղ զինքը կը կոչէ Երկրորդ Մովսէս* (Յաղագս Հոգւոյն Սրբոյ. *գլ. իթ. առ Ամփիլոքիոս*)։

*Իր մասին եղած նկարագրութիւններն առ հասարակ նիւթ ունին իր հրաշքները, զորս այնչափ շատ գործած է, որ «Սքանչելագործ» յորջորջումն ստացած է։ Իր խորհրդանշանը՝ հովուական ցուպը՝ կարեւորութիւն ունի նաեւ աշխարհագրին համար, վասնզի Հայոց լեռներէն բխող Գայլ գետին սահման ցոյց տուաւ անով, վտանգաւոր տեղերը ցուպը գետինը վարսելով։*

*Իր մահուան ատեն* 17 *հեթանոս մնացած է կ'ըսուի Նէոկեսարիա, այնչափ՝ որչափ ինքը նախ քրիստոնեայ գտած էր հոն։*

*Այս յայտնութիւնն իսկ բաւական է ապացուցանելու թէ Քրիստոնէութիւնը Կապադովկիոյ մէջ հետզհետէ կը զարգանար, մասնաւորապէս Գ. դարուն արագ քայլերով առաջանալով։*

*Սքանչելագործի աշակերտակիցն ու բարեկամը՝ Փիրմիլիանոս* (Firmilianos) *Կեսարացի՝* 233*ին*(3) *եպիսկոպոս ընտրուեցաւ Կեսարիոյ։ Փիրմիլիանոս, ազնուական էր և նշանաւոր իր դաստիարակութեամբ և ուսմամբ։ Մեռաւ՝ Անտիոքի ժողովին երթալու ատեն՝* 269*ին Տարսոն քաղաքը։ Այս շատ նշանաւոր եպիսկոպոսէն, որ հաղորդակցութեան մէջ էր Հարաւի և Արեւմտից (Ափրիկէի) եպիսկոպոսաց հետ, միակ նամակ մը հասած է մեզի՝ արեւմտեան աւանդութեամբ՝ լատիներէնի փոխադրուած, Կիպրիանոսի թուղթերուն մէջ։ Այս նամակին մէջ կը յիշէ մեծ երկրաշարժը որու ենթարկուեցաւ Կապադովկիա, և որով*

(1) *Որիգինէս կամ Որոգինէս* (185 – 254) *Ալեքսանդրիոյ դպրոցին ամէնէն նշանաւոր դէմքերէն մին է, որ յաջորդած է Կղեմէս Աղեքսանդրացիի իբր Աղեքսանդրիոյ դպրոցին վարիչ* (203)։

*Մաքսիմիանոս կայսեր կատաղութենէն զերծանելու համար առանձնացած է Կապադովկիա ուր երկու տարի մնացած է։*

*Ալեքսանդրիան ձգելով Պաղեստինի Կեսարիա քաղաքը դպրոց մը հիմնած է յետոյ, և մեռած՝ 'ի Տիւրոս,*

(2) Zimmerer *կ'ըսէ թէ զինքն քրիստոնէութեան դարձուցած է Որոգինէս նախ ի Բերիա (=Հալէպ) և յետոյ անկէ Կապադովկիոյ Կեսարիա փախած է։*

(3) *Օրմանեան* (Ազգապատում) 232 *կը նշանակէ անոր եպիսկոպոսացման թուականը։ Աւանդական ցուցակին մէջ Ալեքսանդր եպիսկ.ի յաջորդ ցոյց տրուած է* (*Նոյն, էջ* 41)։

ամբողջ քաղաքներ երկրիս երեսէն անհետ եղան և Քրիստոնէից ալ նոր հալածանքի առիթ(1)։

Իր ժամանակը Կեսարիա կ'ապրէր Յուլիանա կոյսը, որուն քով ապաստանարան գտաւ Որոգինէս երկու տարի և որուն նուիրած է Սիմաքոս մէկ կամ շատ գիրքեր։ Խաղաղութեան ժամանակամիջոցը սակայն կարճ կը տևէ, վասնզի Մաքսիմիանոս Թրակացի (235–238), որ Փիրմիլիանոսի Կեսարիոյ աթոռը գրաւելէն քանի մը տարի յետոյ գահ բարձրացած էր, վերստին սկսաւ Քրիստոնէից դէմ հալածանքը որ Կապադովկիոյ մէջ գործադրուեցաւ երկրին կուսակալին Սերինիանոսի ձեռքով։ Շատ եկեղեցիներ հրով այրեցան ու քանդուեցան, և փախստականները անապատներու մէջ ապաստանարաններ շինեցին:

Եկեղեցին վերստին խաղաղութիւն վայելեց Գորդիանոսի (238–244) և մանաւանդ Փիլիպպոս Արաբի (244–249) ժամանակ, սակայն այս խաղաղութիւնը փասակար եղաւ Եկեղեցիին և երկչոտութեան ու կրօնական գայթակղութեան առիթ դարձաւ։

Դեկիոս կայսեր (250–253) ընդհանուր հալածանքը որ նպատակ ունէր բոլորովին ջնջել քրիստոնէութիւնը, թէև հերձուածներու, ուրացութիւններու և ամէն տեսակ աղէտի պատճառ եղաւ, բայց մաքրեց միևնոյն ատեն Եկեղեցին իր անսուրբ և կեղծ անդամներէն։ Եկեղեցին նորոգեցաւ, զօրացաւ հալածանքին մէջ և ուրացողներուն տեղ՝ ունեցաւ հաստատամիտ և անձնուէր հաւատացեալներ։

Դեկոսի հալածանքին ատեն զոր կը նկարագրէ Գրիգոր Նիւսացի, Կապադովկիա ծնաւ երկու զարմանալի նահատակներ, Կիւրեղ Մանուկը և Մերկիւրիոս(2) «Սկիւթացին»։

Կիւրեղին հետ նահատակակից կը յիշուին յաճախ՝ Կարելոս, Պրիմոլոս, Ֆինոդոս, Վենուստոս, Դիոսինոս, Աղեքսանդր, Տրեդինթէոս և Յոկունդոս, որոնք Կեսարիա վկայուած են (Zimmerer)։

Բոլոր այս մարտիրոսութիւնները որոնց յիշատակը վկայաբանութիւնք կը բերեն մեզի կը հասցնեն, ինչպէս նաև գրաւոր յիշատակներ և ժողովական արձանագրութիւններ, որոնք քրիստոնեայ Եկեղեցւոյ մը կազմակերպութիւնը ի Կապադովկիա կ'ապացուցանեն, արդէն ցոյց կուտան թէ Հռոմէական կայսրութիւնը հրդեհող բոցը նաև իր հրեղէն ճառագայթները հասցուցած էր Կապադովկիա, ուր քրիստոնեայ զօրաւոր ոյժ մը երևան կուգար, որ ո՛չ միայն այդ շրջանակին այլ և ամբողջ քրիստոնեայ աշխարհին մէջ պիտի գրաւէր կարևոր տեղ մը։

Բոլորովին տարբեր պիտի ըլլար թերևս ինչպէս Հռոմէական կայսրութեան ճակատագիրը նոյնպէս նաև Փոքր Ասիոյ ապագան, եթէ Հռոմէական ապականութեան դէմ մաքառող նոր կրօնը կարենար խա-

---

(1) Մովսէս Խորենացի (Բ. 75) կ'ըսէ թէ «սքանչելին յուսումնասիրութեան» Փիրմիլիանոս տղայութեանը Որոգինէսի աշակերտ եղած է և բացի ուրիշ գիրքերէն, Մաքսիմիանոսէն և Դեկոսէն առաջ եղած հալածանքին պատմութիւնը գրած է ուր Տրդատի հօր՝ Խոսրովի ժամանակ Հայաստանի մէջ վկայուող նահատակաց վրայ ալ կը խօսէր։

(2) Ս. Զինւորն Մերկիւրիոսի վկայաբանութիւնը նշանակուած է 25 նոյեմ.ին։ (Ալիշան. Արշալոյս եւ Արեւելք յուսաւորութեան Հայոց. ԲԶՄՊ. 1901 էջ 13)։



ղաղ պայմաններու մէջ կատարել իր նուաճումները։

Դժբախտաբար քրիստոնէութիւնը միայն տկարացնելու ծառայեց կայսրութիւնը որուն սահմաններուն վրայ զուգադիպաբար երևացին բարբարոս ժողովուրդներ՝ լեցուն անոր հարուստ երկիրները ողողելու և կողոպտելու փափաքով։

Իր քրիստոնէացման թափին մէջ արագ քայլերով առաջ գացող Փոքր Ասիան անոր անդրանիկ ճաշակը առաւ Վալերիանոս կայսեր (253–360) ժամանակ, երբ 257–260 Գոթացիք ամէն տարի ողողեցին Փոքր Ասիան և զայն աւարի ու սուրի մատնեցին։

Միևնոյն ժամանակ (257) Վալերիանոս սկսաւ հալածանքը քրիստոնէից դէմ, որոնք մինչև իր գերի իյնալը (260) տառապեցան։

Այս շրջանին ի Կեսարիա նահատակուեցան բազմաթիւ մանուկներ, որոնց հաւատքին հաստատութիւնը և զուարթութեամբ տանջանքներու տոկալը, բոլոր քաղաքին զարմանքը գրաւեց (Մելք. եպ. Մուրատեանց. նոյն էջ 107)։

Գաղիանոս կայսեր (260–268) ժամանակ դադրեցաւ հալածանքը և եպիսկոպոսները իրաւունք ստացան ազատօրէն վարել իրենց պաշտօնը (262ին)։ Քրիստոնէութիւնը ճանչցուեցաւ իբր օրէնքով հաստատուած կրօնք, և Եկեղեցին՝ օրինաւորապէս ճանչցուած կազմակերպութիւն։

Այս խաղաղութիւնը Գաղիանոսի յաջորդներուն օրով ալ գրեթէ անընդհատ 40 տարի շարունակուեցաւ և ծառայեց ամրապնդելու Փոքր Ասիոյ եկեղեցիները, թէև մասնակի հալածանքները կը շարունակուէին, մարտիրոսական պսակով զարդարելով ճակատները տեղացի քրիստոնեաներուն։

Փիրմիլիանոս եպիսկոպոս Կեսարիոյ, որուն պաշտօնավարութեան շրջանին (233–269), ինչպէս տեսնուեցաւ, Եկեղեցին պարբերաբար խաղաղութեան և հալածանքի շրջաններ ունեցած էր, կրնայ նկատուիլ իսկական կազմակերպիչը Կապադովկիոյ եկեղեցւոյն, որ Գ. դարուն կիսուն, արդէն զօրաւոր կազմ մը ունէր Փոքր Ասիոյ մէջ, ուր թէև տակաւին ստորերկրեայ և գաղտնի, ունէր իր եպիսկոպոսական աթոռները՝ Կապադովկիոյ, Կիլիկիոյ և Գաղատիոյ մէջ։

Դիոնեսիոս առ Սեքստոս Հռոմայ պապը (257–258) գրած թուղթին մէջ կը յիշէ որ Ստեփանոս Հռոմայ (254–257), բանադրանք սպառնացած է Կիլիկիոյ, Կապադովկիոյ և Գաղատիոյ բոլոր եպիսկոպոսներուն, որոնց մէջ անունով կը յիշուին Հելենոս և Փիրմիլիանոս։

Անտիոքի երրորդ Սիւնհոդոսի շրջաբերականէն կտոր մը կը հաղորդէ Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Է. լ.) որ կը ցուցնէ թէ Փիրմիլիանոս՝ Դիոնեսիոս մեծի հետ՝ արևելքի ամենանշանաւոր եպիսկոպոսն էր։

Այս ժամանակ կը տեսնուի որ Կեսարիոյ բնակիչներուն մեծ մասը քրիստոնեայ էր և քաղաքը՝ գաւառին բոլոր Եկեղեցիներուն «մայրաքաղաք»։ Կապադովկեան եկեղեցին, ամրապնդուած և զօրացած, բարգաւաճ ու տարածուն, ո՛չ միայն ինքն իր մէջ կը զարգանար, այլ Գ. դարուն կէսէն կ'սկսէր նոյնիսկ հաւատածաւալական գործունէութեան, որուն առաջին արդիւնքը եղաւ Գոթերու լուսաւորութիւնը։

Գոթացիք (Σχὸθαι) 264ին դարձեալ հինաբար արշաւած էին Կապադովկիա, երբ Եւդիքէս զանոնք քրիստոնեայ դարձուց (Ս. Բարսեղ Թղ. ՃԿԴ)։ Իսկ այն քրիստոնեաները որոնք գերի տարուած էին ոչ

նուազ նպաստեցին անոնց քրիստոնէացման։ Այնպէս որ Կապադովկեան Եկեղեցին եղաւ լուսաւորիչը Գոթաց։

Այս մասին կը վկայէ Փիլոստորգիոս(1) (Պատմ. Եկեղ. Բ. Ե.) որ կը պատմէ թէ Գոթաց առաքեալը Կապադովկիացի էր, մին այն գերիներէն՝ զոր գոթերը յափշտակած տարած էին, Պառնասոսի մօտ Սադագոլթինա փոքր քաղաքէն։

Անիկա էր Ուլփիլաս (Wulfila) որ զաւակն էր Սադագոլթինացի քրիստոնեայ ընտանիքի մը, որուն ծնողքը գերեցին 267ին Դանուբեան Գոթերը։ Գերութեան մէջ 311ին ծնաւ անիկա և մեռաւ 383ին(2) իբր եպիսկոպոս Բիւզանդիոնի մէջ, ուր կոչուած էր Թէոտոր կայսրէն վիճաբանութեան մը համար(3)։

Այս միջոցներուն է որ նաեւ Կապադովկեան Եկեղեցին իր հաւատածաւալ գործունէութեան շրջանակը մինչեւ Հայաստան, Վրաստան և Կովկասեան երկիրներ կը տարածէ՝ ի Կեսարիա մարզուած և դաստիարակուած Հայու մը Ս. Գրիգորի և իր գործակիցներու քարոզութեամբ, որոնք կ'արդիւնաւորուին և Հայոց Լուսաւորիչի տիտղոսը կ'ապահովեն Կեսարիոյ Եկեղեցիին այս աշակերտին, որ 287էն մինչեւ 302՝ իր Կեսարիոյ մէջ իբր եպիսկոպոսապետ ձեռնադրութիւնը, Հայաստանի քրիստոնէացման գործին բերած է մեծ նպաստ, թէեւ իրմէն առաջ արդէն նոր կրօնը մուտ գործած ըլլար Հայաստան։

Խաղաղութեան ժամանակամիջոցը որ վայելեց Եկեղեցին ի զուր չանցաւ ուրեմն և Կապադովկեան Եկեղեցին շուտ ծաղկեցաւ։

Երեւոյթը ընդհանուր էր արդէն բոլոր Հռոմէական կայսրութեան համար, ուր հսկայ քայլերով կ'առաջդիմէր նոր կրօնքը։

Քրիստոնէութեան սերմերը բեղմնաւորուած և զարգացած էին, մանաւորապէս ուռճանալով արիւնովը իր նահատակներուն և մարտիրոսներուն, որոնց ցոյց տուած քաջութիւնը և պատրաստակամութիւնը յանուն Յիսուս Քրիստոսի զոհուելու համար, աւելի կ'արծարծէր եռանդը Քրիստոնէից, որոնց թիւը օրէ օր կ'աճէր, խորհրդաւոր վարակումով մը հրդեհելով հոգիները։

Այնպէս որ մարտիրոսական դափնեպսակով կը զարդարուին Կապադովկիոյ զաւակներէն շատերը երբ Փիրմիլիանոս եպս.ի (269) և Գաղիանոս կայսեր մահէ (268) յետոյ կը վերաբացուի հալածանքներու շրջանը։

Այսպէս Աւրելիանոս կայսեր (270–275) ատեն, ի շարս Եկեղեցւոյ մարտիրոսներուն պատմութիւնը կը յիշէ նաեւ Պորփիւրիոս Կեսարացին որ նահատակուած է 272ին (Յայսմ. փետր. 16)։

Նոյնպէս ի Կապադովկիա մարտիրոսացած է 275ին, Ս. Մամաս,

---

(1) Ինքն ալ Կապադովկացի մը, որ ծնած է 368ին և գրեթէ ժամանակակից է այս դէպքերուն։

(2) 381ին կը նշանակէ անոր մահուան թուականը Հ. Ներսէս վրդ. Ակինեան (Հայ Մշակոյթի Օր, 1932, Փարիզ, էջ 48)։

(3) Փիլոստորգիոս, Սողոմենոս և Սոկրատ, կը հաստատեն թէ Ուլփիլաս է գոթական նշանագիրներու հնարիչը և Ս. Գրոց գոթերէնի թարգմանիչը։ Հանճարեղ Մխիթարեանը՝ Հ. Ակինեան գոթական գիրերու գիւտը՝ Ս. Մաշտոցի կ'ընծայէ համոզիչ փաստերով (Հայ Մշակոյթի Օր, էջ 41-48)։



որու անունը այնքան ժողովրդական էր գաւառին մէջ։ Ան հովիւ մըն էր (Գրիգոր Նազիանզացի, Ճառ ԽԳ. 'ի Մամաս և Ս. Բարսեղ Ճառ ԻԶ. Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 553)։

Այլեւս մեծ թափով կը յառաջանար նոր կրօնը որ կը թափանցէր ամէն կողմ աղքատին խրճիթէն մինչեւ կայսեր արքունիքը։

Բազմաթիւ ատենակալներ և պաշտօնատարներ բացարձակ կը հետեւէին Քրիստոնէութեան։ Դիոկղետիանոս կայսեր (284–305) կինը Պրիսկա և աղջիկը՝ Վալերիա յարած էին նոր կրօնքին։ Ամէն գաւառներու մէջ քրիստոնեայ տաճարները կը բարձրանային։

Սակայն յաջողութիւնը իրեն հետ կը բերէր նաեւ անկումը։

Բարեպաշտութիւնը պակսած էր, մեծ դէմքեր՝ իրենց քրիստոնէական նախանձաւորութեամբ և հզօր գործունէութեամբ այլեւս երեւան չէին գար, և եպիսկոպոսները՝ փառասիրութեամբ և ագահութեամբ պատճառ կը դառնային պառակտումներու և վէճերու։ Այս աննախանձելի վիճակին մէջ էր Եկեղեցին երբ եկաւ վերջին և ամենասաստիկ հալածանքը, որ Դիոկղետիանոս կայսրը գործադրեց 18 տարի քրիստոնեաներու նպաստաւոր քաղաքականութիւն մը բռնելէ յետոյ, յանկարծ 298ին հրաման արձակելով որ պալատին բոլոր ծառաները և զինուորական պաշտօնատարները պաշտօն և զոհ մատուցանեն Աստուածներուն։ Եւ որովհետեւ շատեր չհնազանդեցան մարտիրոսական պսակ ստացան։

Դիոկղետիանոս հրամայեց քանդել տաճարները և այրել քրիստոնէական գիրքերը։ Բոլոր քրիստոնեայք զրկուեցան իրենց պատուոյ աստիճաններէն և օրէնքին պաշտպանութենէն։

303ին ընդհանուր կոտորածը սկսաւ Քրիստոնէից և տեւեց մինչև 305:

Այս սոսկալի հալածանքներուն առթիւ կը յիշուին վկայաբանութիւններու մէջ Կապադովկիացի բազմաթիւ մարտիրոսներ։

Այսպէս, Բարղամ, Յուլիտա և Կապիտոլինա ի Կեսարիա (Բարսեղ Ճառ Ե.) իրենց Երոտէիս ալախինովը, կը նահատակուին Ջելեկինթոս կուսակալին ատեն։ Սապրիկ կամ Սաբրիկիոս (կամ Փաբրիկիոս) կուսակալին ատեն՝ Ս. Դորոթէա(1), քոյրերը Քրեստէ և Կալիստէ(2),

---

(1) Ս. Դորոթէա կոյս նահատակուած է 304ին կամ 306ին (տես Ալիշան, Արշալոյս եւ Արեւելք Լուսաւորութեան Հայոց, Բազմավէպ, 1901, էջ 11)։ Իրեն կը ցանկային շատեր, բայց ինքն Քրիստոսի նուիրուեցաւ։ Սապրիկ անունով անգութ դատաւոր մը՝ համոզելէ յետոյ վախցնելու համար կախաղան հանել տուաւ։ Դորոթէա փութով կ'ուզէր մեռնիլ, Աստուծոյ արքայութիւնը ժառանգելու համար։ Սապրիկ ամէն ջանք ըրաւ կոյսը մոլորեցնելու։ Երկու ուրացեալ կիներու յանձնեց զայն, բայց անոնք անկէ ազդուած՝ զղջացին իրենց ուրացութեան համար և դատապարտուեցան իրարու կապուած կռնակ կռնակի կրակը ձգուելու, ուր և կուսին քաջալերութեամբ զօրացած՝ ողջակիզուեցան։

Սապրիկ յետոյ չարչարեց Դորոթէան կախուած ծեծելով, մարմինը պատռտելով և ջահերով այրելով, վերջապէս գլխատելով։ Կոյսը բարձր ձայնով փառք կու տար Քրիստոսի։ (Ալիշան, նոյն)։ Դորոթէա կը տօնուի փետրուար 6ին։

(2) Հաւանօրէն Դորոթէայի վկայութեան մէջ յիշուած երկու կիները որոնք ողջակիզուեցան։

Թէոփիլոս(1) փաստաբանը ու Սարգիս որ երկար ժամանակ ապրած էր միայնութեան մէջ յԱրգոս, մեծ վկան Գէորգ, Եւստրադիոս, Աւքսեն-դիոս, Եւգինէոս, Մարտարիոս, և Որեստէս, ասոնք Լեւսիաս դրկեց Ագրիկոլայի ի Սեբաստիա, ուր 296ին կատարուեցան։ Բարղամ (Բալ-դէարէն՝ «Բարլաամ», որդի ժողովրդեան), որ քրիստոնեայ Մուկիոս Սկեւոլան է, յաճախ նկարուած կը գտնուի Կապադովկեան որմնա-նկարներու վրայ՝ ձեռքը կրակի վրայ կարկառած, որով բանի կուռ-քերու խունկ զոհել կ'ուզէին տալ, բայց աւելի յանձն առաւ ձեռքը այրել քան խունկ մը բոցին վրայ ձգել։ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 136)։

Բարսեղ գեղեցիկ ներբողեան մը խօսած է ասոր վրայ, նոյնպէս ներբողեան մը 375ին Յուղիտայի վրայ՝ անոր յիշատակի օրը Կեսարիոյ Մայր եկեղեցւոյն մէջ, ուր թաղուած էր ան։

Ս. Սարգիսի վկայութեան տեղն ալ Կեսարիա կ'ըսուի, բայց Բո-լանդեանց վկայաբանութիւնները Հռոմ մատնանիշ կ'ընեն։

Թէ՛ Արեւելքի և թէ՛ Արեւմուտքի քրիստոնէական գեղարուեստին համար շատ նշանաւոր եղաւ մեծ վկան Գէորգ։

Պիոս Ե. պապը հռոմէական ժամագիրքէն դուրս ձգել տուաւ անոր մասին եղած պատմուածքները, ասկէ և այն պարագայէն որ նոյն սուրբը ո՛չ միայն Արեւելքի քրիստոնէից, այլ նոյնիսկ մահմետակա-նաց քով առանձին յարգութիւն կը վայելէ, հետեւութիւն հանուած է որ պատմական անձ մը չէ ան, այլ իր գրոյցը դիցաբանական հիմ ունի, և Ս. Գէորգ ուրիշ բան չէ բայց հին հեթանոսական դիք մը քրիստոնէական տարազին ներքեւ՝ հաւանօրէն Կապադովկացւոց Միհր-Միթրասը։

Արդարեւ կը պակսին Ս. Գէորգայ վաւերական վկայաբանութիւն-ներ, վասնզի արդի վկայաբանութիւնները՝ յատկապէս լատիներէն լեզ-ւաւ եղածները՝ ամէնն ալ անհարազատ են և առասպելներով լի։ Եւ ճիշդ վկայաբանութիւններուն հնագոյններն Արիանոսներու գործ են, այնպէս որ Գեղասիոս (492–496) պապին օրով հռոմէական սիւնհոդոս մը՝ առաջին անգամ արգիլեալ գրոց ցանկ մը (index librorum prohibitorum) հրատարակած է, այս վկայաբանութիւնները սուրբերու ուրիշ հերի-տիկոսական վարքերուն հետ մէկտեղ դատապարտեց 494ին կամ 496ին։ Detzel կ'ըսէ որ Ս. Գէորգայ բոլոր գրոյցներուն՝ յատկապէս յունականներուն հիմնական մասն անշուշտ կը պարունակէ յիշատակ մը այս նշանաւոր սուրբին (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 137)։

Իր անունով կոչուած են Տարտանէլի անցքը՝ «Բազուկ Ս. Գէոր-գայ» և 13 ասպետական կարգեր, որոնց մէջ նշանաւորագոյնն է պաւերականն՝ որուն հնութիւնը մինչեւ խաչակրեաց ժամանակը կը հասնի։ Zimmerer, (ՀԱ. 1900, էջ 137) կ'ըսէ թէ «չեմ յիշեր տեսած

---

(1) Ալիշան փոխանակ փաստաբանի դատական պաշտօնեայ կը ներկայացնէ զինքը։ Դորոթէայի նահատակութեան պահուն զայն ծաղրած է ըսելով որ «երբ դրախտ երթաս՝ անոր ծաղիկներէն և պտուղներէն ղրկէ ինծի»։ Դորոթէա կը խոստանայ և արդարեւ անոր գլխատումէն յետոյ երիտասարդ մը իրեն կը բերէ անուշահոտ վար-դեր և գեղեցիկ խնձորներ։ Վասնզի ծաղիկի և պտուղի եղանակ չէր, Թէոփիլոս կը հաւատայ ի Քրիստոս և ինքն ալ կը նահատակուի գըլ-խատութեամբ։



ըլլալ որ կապադովկեան որմնանկարներուն մէջ Ս. Գէորգ նկարուած ըլլայ իբր «վիշապասպան», բայց յաճախ իբր ձիաւոր և սպառազէն»։ Ասիկա արդէն բաւական փաստ մըն է թէ Ս. Գէորգ առասպելական անձ մըն է։

Ուրպանոս կուսակալին ատեն վկայուած են նաեւ Անեկտոս(1), և Փիլոմարքոս կուսակալին ատեն՝ Աթանագինէս(2) (Athenogenes) իր տասն աշակերտներով, Մաքսիմիանոսի ատեն՝ Որեստէս Տիանացի և Բլասիոս, իսկ Փիրմուսի ատեն՝ Ակակիոս, Անտոնիոս Նիկեփորոս, Զե-պինոս, Գերմանոս(3), Բասիլիսկոս Կոմանացի կամ Ամասիացի, կոյսեր՝ Աղեքսանդրա, Կղաւդիա, Եւփրասիա, Մատրոնա, Յուլիանա, Եւփե-միա և Թէոդոսիա «յԱմիսոսի Պափլագոնիոյ» կամ յԱմիսոս։

Գրիգոր Նազիանզացի Մաքսիմինոսի 306–313 տարիներու հալա-ծանքները կ'անուանէ «ամենասաստիկն ու ամենածանրը»։

309ին ի Կեսարիա կը նահատակուի Կեսար(4) որուն յիշատակը կը կատարուի 3 նոյեմ.ին (Ալիշան, նոյն, ԲԶՄՊ. 1903, էջ 13) և Պաղես-տինի Կեսարիա քաղաքը՝ Սելեւկոս և Յուլիանոս կապադովկիացի-ները որոնք Պամփիլոսի Բերիտացւոյ ընկերներն էին։

Եւսեբիոս (Վկայք Պաղեստ. տես Եկեղեց. Պատմ. Ը. 98) Յուլիանո-սին համար կ'ըսէ «սա էր ըստ մարմնոյ ազգաւ Կապադովկացւոց, բայց բա-րուքն բարեպաշտացոյն եւ առաւել ճաւատացեալ եւ անարատ»։

Լիկինիանոսի հալածանքը նկարագրած է Բարսեղ՝ Մեծ Գոր-դիոս(5) վկային վրայ, որ վկայեց 314ին, իր ըսած ներբողեան ճա-ռին մէջ։ Հալածանաց սաստկութիւնը անապատները փախստականներով լեցուց։ Նաեւ Գորդիոս երկար ատեն բնակեցաւ Արգէոսի քարայրներուն մէջ՝ «ի խորագոյն եւ յանկախ անապատ լերանց»։ Նոյնպէս կատարեցաւ Բա-սիլիոս Ամասիոյ՝ որ կայսեր ցանկասէր բռնութենէն իրեն ապաստա-նող Գլափիւռան պահպանեց։ Սեբաստիոյ վկաները որ ճահիճին մէջ

---

(1) Բոլանդեանք զայն նահատակուած կը համարեն 'ի Կեսարիա Պաղեստինացւոց։

(2) Բոլանդեանք՝ Սեբաստիա — որուն եպիսկոպոսն էր — նահա-տակուած է, կ'ըսեն։

(3) Անտոնինոս, Զեպինոս, Գերմանոս և Եննաթա կոյս վկաներն ալ կը կարծուի Կեսարիա Պաղեստինի նահատակուած։

(4) Ուրիշ Կեսար մըն ալ կայ նահատակուած 309ին Կապադովկիա կամ մերձաւոր Արաբիսոս քաղաքին մէջ, որուն յիշատակը կը տօնուի 28 Դեկտեմբերին (նոյն)։

(5) Ս. Գորդիոս կամ Գորդիանոս զօրական կամ զօրապետ մըն էր։ Ալիշան իր նահատակութեան տեղը՝ Կեսարիա և թուականը 320 կը դնէ (ԲԶՄՊ. 1901, էջ 13)։ Ասիկա զզուելով կռապաշտութենէն և անոր պաշտպաններէ, թողուց զինուորական ասպարէզը և առանձնացաւ։ Բայց երբ լսեց որ հեթանոսական մեծ հանդէս և խաղեր կը կատար-ուին քաղաքին մէջ և թոյլ քրիստոնեաներ կ'երթան տեսնելու, իջաւ հրապարակ և յանդիմանեց ամէնն ալ՝ ինչպէս նաեւ դատաւորը։ Այս պատճառով զինքն դատապարտեցին։ Քաջութեամբ նահատակուեցաւ։ Յիշատակը կը կատարուի Յունուար 3ին։ Ս. Բարսեղ իրեն անունով եկեղեցի մը կանգնած էր (նոյն)։

նետուեցան, ներբողած են Բարսեղ, Գրիգոր Նիւսացի և Աստերիոս Ամասիացի։ Վկայաբանութիւններ կը յիշեն նաեւ հետեւեալ նահատակները, Կարտերիոս, Ագաթոդորոս, Եւտիքէս Մելիտինեցի, Տերենտիոս Իկոնիոնացի և Ապաղոնիոս։

Գամրացի սրբոց խումն բազմութենէն յիշենք՝ Սաբբաս 'ի Մուտալասկս, Եւթինիոս Մելիտինեցի, Դոմատիան, Թէոդոսիոս «վանահայր» (Κοινοβιάρχης) Մեգարիսեցի, Կանիդոս, Եւդոկիմոս, Մակրինէ՝ Ս. Բարսեղի քոյրը և Մելետիոս, որոնք արդէն վանուց եւ կրօնաւորութեան ժամանակ կ'իյնան:

Ալիշան (տես նոյն) կեսարիա նահատակուած կը յիշէ Դ. դարուն սկիզբները նաեւ ուրիշ երեք վկաներ, Պոլիեւկտիս, Վիկտոր և Դոնատ (յիշատակուած 21 Մայիսին)։

319ին նոյն Լիկիանոսէն կը նահատակուի Կապադովկիոյ Հերակլիա քաղաքը Ս. Թէոդորոս Ստրատելատն որ զինուորական հրամանատարութեան պատիւի հասած էր։ Կը ճանչցուի իբր Արակլիացի, վասնզի հոն կուռքերու անդրիները կոտրտելուն համար՝ բռնաւորը ի խաչ հանել և նետահար ընել տուաւ, բայց երբ լսեց ժողովուրդին տրտունջը իրեն դէմ, վար առնել տուաւ և գաղտուկ գլխատեց բանտին մէջ։ (Յոյները և լատինները իր տօնը կը կատարեն 7 կամ 8 փետրուարին և մեր Ցայսմաւուրքը՝ 9 յունիսին կը յիշատակէ. Ալիշան, Նոյն, ԲԶՄՊ. 1901, էջ 10)։

Դիոկղետիանոսի հրաժարելէն քանի մը տարի յետոյ՝ յաջորդող կայսերը՝ Գաղերիոս (305-311), Կոստանդիանոս և Լիկինիանոս, 311ին հրատարակեցին ի նպաստ քրիստոնէից առաջին հրովարտակը։ Կոստանդիոսի որդին Կոստանդիանոս միահեծան տէր դառնալով Արեւմուտքի համաձայնութեամբ իր աթոռակից Լիկինիանոսի, որ կայսրն էր Արեւելից, ներողութեան հրովարտակ հրատարակեց 312ին ամէն կրօններու համար, որ յաջորդ 313 թուականին վերահաստատուեցաւ և ընդարձակուեցաւ ուրիշ հրովարտակով մը որ Միլանի մէջ շնորհուեցաւ։

Կոստանդիանոս յարեցաւ Քրիստոնէութեան ո՛չ թէ համոզմամբ այլ հարկադրուած, վասնզի եթէ համոզմամբ քրիստոնեայ եղած ըլլար թոյլ պիտի չտար իր հօր աստուածացումին և ոչ ալ պիտի կրէր «գերագոյն քահանայապետ» տիտղոսը որ մինչեւ մահը գործածեց։

Իրեն համար քաղաքագիտական գործ մը եղաւ իր յարումը դէպի քրիստոնէութիւն որու տուաւ արտօնութիւններ և առանձնաշնորհներ, ինչպէս 321ին եկեղեցիներուն սեփականութիւն ունենալու իրաւունքը, որ յետոյ Եկեղեցիին համար ոյժ մը և տկարութիւն մը պիտի ըլլար միանգամայն։

Մասնաւորապէս 323էն յետոյ երբ ինքն միահեծան տէր եղաւ բովանդակ Հռոմէական կայսրութեան, բոլորովին նոր կրօնքին նեցուկ եղաւ և իր իշխանութիւնը գործածեց զայն ամրապնդելու և զօրացնելու, և 337ին, մերձ ի մահ, մկրտուելով Քրիստոնէութիւնը պաշտօնական կրօնքը դարձուց Հռոմէական կայսրութեան։ Քրիստոնէութեան յաղթանակը ապահովուած էր և յաղթական կրօնին սերմերը բեղմնաւորելու գործին մէջ Կապադովկիա աննշան դեր մը չէր կատարած։

Հիմա որ քրիստոնէութիւնը ազատ էր անշուշտ անոր փթթումը



այս երկրին մէջ աւելի զօրաւոր պիտի ըլլար մանաւանդ անոր համար որ խաղաղութիւնն ալ ապահովուած էր Գաղերիոս կայսեր (305-311) կողմէ, որ պարսից դէմ մղուած յաջող պատերազմէ մը յետոյ, ամրացուցած էր ամբողջ սահմանագլուխը բերդերով և զօրանոցներով։

Այս կերպով Հռոմէական Ասիան խաղաղութեան շրջան մը կ'ունենար որ մօտաւորապէս 40 տարի կը տեւէր, այսինքն մինչեւ Կոստանդիանոսի մահը (†337)։

Յաղթական կայսրերը անշուշտ միտքէ չէին անցըներ որ այս յաջողութիւններով նաեւ կը դիւրացնէին մեծապէս իրենց այնքան ատած քրիստոնէութեան տարածումը։

Արդարեւ քրիստոնէութիւնը գերազանցապէս կ'ամրանար և կ'ոգեւորուէր։

Անիկա միտիք հակում մը կ'ստանար և քրիստոնէական անձնազոհութեան գաղափարը, որ կը մղէր մարդիկը հրաժարիլ աշխարհէն, կը ծնէր վանականութիւնը և միանձնութիւնը։

Արդարեւ Կապադովկիոյ մէջ կը տեսնենք ծագումը վանականութեան որ քրիստոնէական կրօնին ոյժերէն մին պիտի կազմէր յետոյ ներհայեցողական և միտիք անձնազոհութեան մը գերազանց օրինակը տալով։

Արդէն իսկ Նիկիոյ ժողովին գումարման օրերուն (325) Կապադովկեան Վանականաց կռիւը սաստիկ էր (Zimmerer ՀԱ, 1930 էջ 226)։

Երբ Գրիգոր Աստուածաբանի հայրը Ռիմինիի նահանգը ընդունիլ կ'ուզէր, Նազիանզու վանականները յայտնի ապստամբեցան իրեն դէմ (Գր. Նազ. Ճառ. ԻԱ.) (Zimmerer նոյն)։

Նոյնիսկ կրօնական եռանդը Հռոմէական արքունիքը վարակած էր։

Գաղղիոս և Յուլիանոս (յետոյ Ուրացողը) կայսերածին եղբայրները, իրենց երիտասարդութիւնը անցուցին տեսակ մը վանական կեանքով ի Մակելլոս(1), որ արքունի գիւղ (χωρίον βασιλικὸν) մըն էր Արգէոսի ոտքը «ոչ շատ հեռու Կեսարիա քաղաքէն»:

Հոն երկու կայսերազուն իշխանները կ'ուզեն շինել եկեղեցի մը, բայց իբր թէ Յուլիանոսի ձեռքով սկսած աշխատութիւնները աներեւոյթ ձեռք մը կը քանդէր՝ ինչան ապագայ ուրացութեան նոյն իշխանին։

Վերջապէս հալածանքները դադրեցան, և կարծես խաղաղ ժամանակները եկան, բայց Եկեղեցիին համար պայքարը վերջ չէր գտած, վասնզի Արիոսականութիւնը որ ցնցեց ընդհանուր Եկեղեցին մինչեւ Կապադովկիա արձագանգ գտաւ։

Առաջին տիեզերական ժողովը՝ որ այս առթիւ գումարուեցաւ 325ին, ի Նիկիա, մասնակցութեամբ գրեթէ բոլոր քրիստոնեայ աշխարհին եպիսկոպոսներուն՝ թուով 318, իր մէջը ունէր Ղեւոնդիոս Կեսարիոյ եպիսկոպոսը իր Հերմոգինէս սարկաւագին հետ (Հմմտ. Եւսեբ. «Վարք Կոստանդիանու» և նաեւ Գր. Նազ. ճառ ԻԹ)։

Յոյց տալու համար թէ Կապադովկիոյ Եկեղեցին որքան մեծ տեղ մը կը գրաւէր քրիստոնեայ աշխարհին մէջ կը բաւէ ըսել թէ Ղեւոն-

(1) Տես Ramsay էջ 307 իսկ Ալիշան (էջ 266) կը կարծէ թէ Մակելլոսի տեղն է արդի Հիսարճիք Թրքաբնակ գիւղը կամ արդի Գէօրէմէն։

*գիոս, Ս. Գրիգոր Լուսաւորիչի ձեռնադրիչը կ'ստորագրէր Նիկիոյ ժողովին որոշմանց տակ* «Ղեւոնդէս Կեսարիայ, Կապադովկիայ, Գաղատիայ, եւ Հայոց աշխարհի Փոքուն եւ Մեծին»:

*Ինչպէս կը տեսնուի Ղեւոնդիոսի կիրարկած տիտղոսէն, Կեսարիոյ աթոռը իր իրաւասութեան տակ ունէր ընդարձակ երկիրներ։*

*Եկեղեցին որ իր կազմակերպութիւնը պատշաճեցուցած էր Հռոմէական կայսրութեան բաժանումներուն, ըստ Դիոկղետիանոսի վարչական բաժանումներուն Արեւելքի կուսակալութեան հինգ թեմերուն մէջ հաստատած էր մէկ մէկ Պատրիարքական կամ էքսարքութեան աթոռ։*

*Այսպէս* 1. Արեւելքի 2. Եգիպտոսի *և* 3. Ասիոյ *թեմերուն կեդրոններուն* Անտիոքի, Աղեքսանդրիոյ *և* Եփեսոսի *մէջ կը նստէր մէկ մէկ Պատրիարք, և* 4. Թրակիոյ *և* 5. Պոնտոսի *թեմերու կենտրոններուն՝* Հերակլիոյ *և* Կեսարիոյ *մէջ՝ մէկ մէկ էքսարք*(1)։

*Կեսարիոյ էքսարքը իր իրաւասութեան տակ ունէր Պոնտոսի թեմին ենթակայ բոլոր երկիրները, որոնց մէջ էին արդարեւ Կապադովկիա, Գաղատիա, Պոնտոս Դիոսպոնտեան և Պոլեմոնական, Պափլագոնիա և Փոքր Հայք, որուն յարակցաբար միացած ըլլալու է Մեծ Հայքը որուն տիրապետութեան կը ցանկային կամ իրենց հովանաւորութեան ենթարկած ըլլալու հաւատքը ունէին Հռոմի կայսրերը*(2)։

*Օրմանեան* (Ազգապատում *էջ* 92 – 93) *Հայաստանը Հռոմէական կայսրութեան սահմաններէն դուրս գտնուելուն համար թէեւ կը պնդէ թէ Կեսարիոյ աթոռը ոչ մէկ իշխանութիւն կրնար ունենալ անոր վրայ, սակայն անժխտելի է որ Կեսարիոյ էքսարքները այս յաւակնութիւնը ունեցած են, քաղաքական ձգտումներու հետեւանօք։*

*Կեսարիոյ աթոռը յետոյ մերկացաւ իր էքսարքութեան տիտղոսէն և Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքութեան ենթակայ մետրոպոլտութիւններէն մին նկատուեցաւ։*

*Բայց, ինչպէս կը տեսնուի երբեմն, մանաւանդ Ղեւոնդիոսի և իր անմիջական յաջորդներուն, և Ս. Բարսեղի ատեն անիկա կը պահէր իր մեծ հեղինակութիւնը, որուն մէջ մեծ դեր ունեցած է անշուշտ քաղաքին՝ այն ժամանակին համար ունեցած կարեւորութիւնը և քրիստոնէութեան տարածումը այն երկրին մէջ՝ այնքան արագ և այնքան զոհաբերութեամբ։*

*Այս մեծ բարգաւաճումը և զարգացումը որ կրնանք հսկայաքայլ*

---

(1) *էքսարքութիւնը աստիճան մըն է Օրթոտոքս Եկեղեցւոյ մէջ Պատրիարքէն վար և արքեպիսկոպոսէն (մետրոպոլիտ) վեր։ Պատրիարք տիտղոսը տրուած է երբեմն մեծ իշխանութիւններու կեդրոն քաղաքներու եպիսկոպոսներուն, իսկ էքսարք նոյն հեղինակութիւնը ունեցող եպիսկոպոսներու որոնք սակայն նստած են այնպիսի նահանգներու կեդրոնը որ մեծ պետութեան մը կեդրոն չեն եղած։ Հերակլիա (Թրակիոյ մէջ) և Կեսարիա, այս պատճառով էքսարք ունէին և ոչ Պատրիարք։*

(2) *Կիւզիկեցի Գեղասիոս, Նիկիոյ ժողովի հարց կարգին, կը յիշատակէ* «Ղեւոնդիոս Կեսարու Կապադովկիացւոց, զարդ եկեղեցւոյն Աստուծոյ վասն Եկեղեցեացն Նորին Կապադովկիոյ, Գաղատիոյ, Պոնտոսի Դիոսպոնտեայ, Պափլագոնիոյ, Պոլեմոնեան Պոնտոսի, Մեծ եւ Փոքր Հայոց»:



*կոչել, կասեցաւ Յուլիանոս Ուրացողի իշխանութեան շրջանին (3 Նոյմ.* 361 – 26 *յունիս* 363) *որ հակահարուած մը բերաւ։*

*Յուլիանոս որ նախապէս հաւատացեալ մըն էր, իմանալով որ թէ՛ Գազա և թէ՛ Կեսարիա Կապադովկիոյ, կուսակալները ձերբակալած էին քանի մը հեթանոսներ իբր բարոյական սկզբնապատճառ ապստամբութեան, պաշտօնանկ ըրաւ այդ կուսակալները և աքսորեց։ Անոնք հազիւ կրցան ազատիլ մահապատիժի ենթարկուելու վտանգէն* (Սոզոմենոս. *Ե. Թ.* Գրիգոր Նազիանզացի, *ճառ Դ*)։

*Ընդհակառակը Քաղկեդոնիս Մարիս եպիսկոպոսը՝ որ սաստիկ թշնամանած էր Յուլիանոսը, անպատիժ թողուեցաւ* (Zimmerer, ՀԱ. 1900, *էջ* 138)։

*Բայց երբ Ուրացող դարձաւ՝ Կեսարիա մեծ փաս տեսաւ, վասնզի Կեսարացիք յառաջագոյն յանդգնած էին քանդել Ջեւսի* քաղաքապահի (Πολιοῦχος) *և Ապողոնի* (Πατρῷος=*հօրու*) *կոչուած տաճարները և նոյնիսկ Յուլիանոսի ատեն այրած՝ իրեն Բախտի* (Fortuna) *Մեհեանը, որուն համար չափազանց կատղած էր Յուլիանոս (տես* Սոզոմենոս, *Ե. դ.* Գր. Նազ. *ճառ Դ.* Լիբանիոս, *եւայլ)։ Բախտին մեհեանը վերջին հեթանոս տաճարն էր որ իրենց քաղաքին մէջ կը մնար։ Հեթանոս խուժանը այս պատճառով զարհուրելի կոտորած մը ըրաւ տեղւոյն քրիստոնէից* (*Գր. Նազ.* ճառ *Գ.*ի Յուլ.)։

*Յուլիանոս տաճարին աւերման մասնակցողներէն ոմանք բանտարկել է և պատժել է և նոյնիսկ գլխատել է յետոյ, ջնջեց քաղաքներու ցուցակէն այս կարեւոր քաղաքը, բան մը որ սոսկ աննշանակ ձեւակերպութիւն մը չէր, վասնզի այս որոշմամբ բոլոր քրիստոնեայ բնակիչները գիւղացիներու պէս ենթարկուեցան տասանորդի և հողային տուրքերու* (Գր. Նազ. *ճառ Գ.*)։

*Անիկա քրիստոնեայ քահանաները շրջապատեց ոստիկան զինուորներով և պահակներով, և վերջապէս վերցուց քաղաքին վրայէն Կեսարական անունը և անոր տուաւ իր հին անունը՝ Մազաքա, որ անիկա կը կրէր երբ միայն աւան մըն էր* (Asie Mineure, *էջ* 479)։

*Յուլիանոս Ուրացողի այս ծանր քայլը քաղաքին կեանքին մէջ տխուր դրուագ մը մնաց և Յուլիանոս անունը համազօր նկատուեցաւ չարութեան։*

*Դարերու հոլովթին մէջէն անիկա եկած հասած է մեր օրերուն Ուրացող կայսեր անունը աղաւաղելով* «Զար Լիանոս»*ի։*

*Սակայն ինչպէս Ս. Աթանաս կ'ըսէր, այս դժխեմ օրերուն քաջալերելով քրիստոնեաները, այս հալածանքը «վաղանցուկ ամպ» մըն էր, որ անցաւ երբ Յուլիանոս ինկաւ Պարսից դէմ մղած պատերազմին մէջ։*

*Այս կարճատեւ փորձութիւնը իբր միջադէպ, ցոյց տուաւ մէկ կողմէն հելլենականութեան (հեթանոսական դից կրօնքին) անզօրութիւնը և փճացումը, միւս կողմէն ազդեց Յուլիանոսի յաջորդներուն վրայ որոնք իբր 20 տարի հետամուտ չեղան բռնի քանդել հելլենականութիւնը։ Տեսակ մը զինադադար էր երկու դաւանութեանց՝ քրիստոնէութեան և հեթանոսութեան մէջ, որ նաեւ տիրած ըլլալու է ընտանեկան կենաց մէջ, ինչպէս կը վկայեն բազմաթիւ բարեկամական նամակներ որոնք այս ժամանակի քրիստոնեայ եպիսկոպոսներու և հեթանոս հռետորներու, ինչպէս Ս. Բարսեղի և Լիբանիոսի,*

Եւստաթէոս եւ Ոպդիմոսի եւ այլոց միջեւ փոխանակուած են (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 138)։

Կեսարիոյ աթոռին վրայ Ղեւոնդիոսի յաջորդեցին Եւլալիոս, Հերմոգինէս, Դիանիոս (Dianios) (340–362) որ յետոյ Արիանոսութեան միտեցաւ եւ որմէ մկրտեցաւ Ս. Բարսեղ, դարձեալ Եւսեբիոս (362–370) որուն ժամանակ կը գործէր նոյն Ս. Բարսեղ, եւ որ եպիսկոպոսին հետ թշնամանալով անապատ փախաւ եւ միայն 365ին դարձաւ, եւ նոյն Եւսեբիոսի մահուանէն ետքն իր հայրենի քաղաքին արքեպիսկոպոսական գահը բազմեցաւ (370)։

Եկեղեցւոյ յաղթանակը աւելի գերազանց եղաւ այն արդիւնքներով որոնք ցոյց տուին իր բազմաթիւ անդամները իրենց փայլուն ձիրքերով եւ կարողութիւններով։

Դէպի Դ. դարուն վերջերը եւ Ե.ի սկիզբները, Եկեղեցւոյ Հայրերուն ամէնէն հռչակաւորները կը յայտնուին։

Ասոնցմէ երեքին ծնունդ տուած էր Կապադովկիա։ Ասոնք են Ս. Բարսեղ եւ Ս. Գր. Նազիանզացի եւ Ս. Գրիգոր Նիւսացի, հռչակաւոր բոլոր քրիստոնէից, իրենց ճարտասանութեամբ եւ իրենց առաքինութեամբ։

Ս. Բարսեղ որ Մեծ Պոնտոսի Նէոկեսարիա քաղաքին մէկ հռետորին որդին էր, ծնած էր 329ին Կեսարիա, Նիկիոյ ժողովէն (325) քիչ յետոյ։ Իր ընտանիքը, ծագմամբ Հայաստանէն, երկրին ամէնէն ծանօթ ընտանիքներէն մին էր, միեւնոյն ատեն Եկեղեցւոյ մէջ ամէնէն հռչակաւորներէն։ Իր հայրը, իր մայրը, իր մօրենական մեծ հայրը սրբոց դասը անցած են։ Ունէր հինգ քոյրեր, որոնց անդրանիկը սրբուհի մը եղաւ եւ երեք եղբայրներ, որոնք էին Ս. Գրիգոր Նիւսացի, Ս. Պետրոս Սեբաստիոյ եւ Ս. Naucrate անապատականը։ Իր հօրը մահէն յետոյ, ճամբորդեց երթալ ուսանելու համար ամէնէն համբաւաւոր ուսուցիչներուն ձեռքին տակ եւ աշակերտեցաւ նախ Կ. Պոլսոյ եւ ապա Աթէնքի հռետորական վարժարաններուն։

Կ. Պոլսոյ մէջ աշակերտեցաւ Լիբանիոսի, Աթէնքի մէջ՝ Հայազգի Պրոյերեսիոսին, իրեն դասընկեր ունենալով նաեւ կայսերազուն Յուլիանոսը որ ապագային Ուրացողը պիտի ըլլար (Asie Mineure, էջ 485-486)։

Աթէնքի մէջ Ս. Բարսեղ հանդիպեցաւ իր բարեկամին որուն կեանքը եւ գործը իրենինէն անբաժան պիտի ըլլար։

Այդ բարեկամն էր Գրիգոր՝ Նազիանզի(1) եպիսկոպոսին որդին, որ իր բարեկամին պէս իբր մայր ունեցած էր սրբուհի մը՝ Նոնա։ Իսկ իր եղբայրն էր Ս. Կեսար հռչակաւոր բժիշկը, որ ապրած էր արքունիքին մէջ Կոստանդի եւ Յուլիանոսի ատեն եւ դիմագրած քաջութեամբ

(1) Նազիանզ կամ Tiberine Կապադովկիոյ մէջ փոքր քաղաք մըն էր, նախապէս կը կոչուէր Diocésarée. Իր անուններէն մին մոռացութեան տրուած է, սակայն միւսը հռչակաւոր դարձած է անունով այս երեւելի մարդուն որուն ծնունդ տուած է (Zimmerer, տես նաեւ Ramsey, նոյն, էջ 285)։ Նազիանզ կը գտնուէր Տիանայի ճամբուն վրայ 24 մղոն յետոյ Արքեղայիսէն եւ այժմ կը կոչուի Նէնիզի, 6 ժամ արեւելք Ագսարայէն (նոյն)։



երկու կայսրերուն զինքն հրապուրելու փորձերուն եւ վերջապէս լքած էր Յուլիանոսի հեթանոս արքունիքը։

Գրիգոր Նազիանզացի «Աստուածաբանը» որ ծնած էր 330ին կրթուած էր նախ Կեսարիա, յետոյ Պաղեստին, Աղեքսանդրիա եւ Աթէնք։

Անբաժանելի բարեկամութեան կապով մը իրարու միանալէ յետոյ Բարսեղ թողուց Աթէնքը դառնալու համար Կապադովկիա, ուր իր ծննդավայր քաղաքին մէջ բաւական ատեն ճարտասանութեան դասեր տուաւ։

Շուտով որոշեց հրաժարիլ հեթանոս գրականութիւնը մշակելէ եւ նուիրուիլ ամբողջութեամբ Աստուծոյ։ Ուստի քիչ յետոյ մկրտուեցաւ (357ին)։ Սակայն հեթանոս դաստիարակութեան ներգործութիւնը միշտ կրած է իր վրայ։

«Ս. Բարսեղ՝ քան ուրիշ ոեւէ Ս. Հայր՝ հիացող մըն է, յոյն հեթանոս քերթողներու եւ իմաստասէրներուն, մանաւանդ Եսիոդոսի, Պղատոնի, Քսենոփոնի եւայլն. որոնցմէ յաճախ կ'օգտուի՝ քաղուածներ եւ նմանութիւններ բերելով իր ճառերուն մէջ, առանց յիշելու բնականաբար անունները եւ քրիստոնէական ձեւ մը՝ շնորհք մը տալով անոնց խօսքերուն» (Հ. Յովհ. վրդ. Թորոսեան, ԲԶՄՊ. 1932, էջ 349)։

Բարսեղ Կեսարիոյ Դիանիոս եպիսկոպոսէն մկրտուելէն յետոյ Արեւելքի եւ Եգիպտոսի վանքերը այցելեց եւ երբ նորէն Կեսարիա դարձաւ ընթերցողի աստիճան առաւ։ 358ին Պոնտոս քաշուեցաւ հոն միայնութեան մէջ ապրելու համար։

Իր բարեկամը եկաւ այցելել իր մեկուսացման մէջ եւ բաժնել իր զրկանքները։

Ս. Բարսեղ, որ հակում ունէր վանական կեանքի, հիմնած էր մենաստան մը որուն գրած էր շատ խստաբեր կանոններ։

Ասով հանդերձ իրեն թող չտուին որ հոն՝ այդ մենաստանին մէջ վերջացնէ իր օրերը։ 362ին Եւսեբիոս Կեսարիոյ եպիսկոպոսը եւ յաջորդը Դիանիոս՝ քահանայ ձեռնադրեց զինքը, սակայն ինքն անհամաձայնութիւն ունենալով իր ձեռնադրիչին հետ կրկին քաշուեցաւ Պոնտոս, ուր երեք տարի եւս առանձնացաւ.

371ին ընտրուեցաւ եպիսկոպոս Կեսարիոյ։ Այս ընտրութիւնը երկու սուրբերուն միութեան համար ճակատագրական եղաւ, ըլլայ անոր համար որ Բարսեղ ազատ չեղաւ պերճանքէ — ինչպէս անոր վերագրած են—, ըլլայ անոր համար որ անիկա հաւատաց թէ անհրաժեշտ էր գործածել իր բարեկամը խոնարհ վիճակի մէջ։ Ս. Բարսեղ, Ս. Գրիգորը անուանեց Sasimeի(1) եպիսկոպոս (Asie Mineure, էջ 486)։

Այս քաղաքը թշուառ գիւղաքաղաք մըն էր Երկրորդ Կապադովկիոյ սահմանին վրայ, առանց ջուրի, առանց կանաչութեան, առանց

(1) Zimmerer կ'ըսէ թէ Գրիգոր Աստուածաբան հայրենիք դառնալով նախ տրամադրութիւն ցոյց տուած է ճգնաւորական կեանքի, բայց բարեկամաց թախանձանօք 372էն ի վեր օգնականը եղած է իր ծեր հօրը, յետոյ առանձին՝ Նազիանզի եպիսկոպոսական աթոռը վարած է (ՀԱ. 1900, էջ 213 նաեւ Մելք. եպս. Մուրատեան, Պատմ. Քրիս. Եկեղեցւոյ, էջ 163)։ Ինչպէս կը տեսնուի հոս տարբերութիւն մը կայ։

ընկերութեան։ Հոն միայն կը լսուէին կառքերու աղմուկը և սայլորդներու աղաղակները, վանքի անիկա անցքի մը վրայ էր, հաստատուած երեք մեծ ճամբաներու հանդիպած տեղը։

Գրիգոր, որ ինքն իսկ նկարագրած է իր այնքան նուազ հրապուրիչ պաշտօնատեղին, կը բողոքէ որ պիտի չդադրի նկատելէ իր հոգեւոր ամուսնութիւնը կատարուած նշանածի մը հետ որ այնքան քիչ կը հմայէ զինքը։ Ան չի ծածկեր իր գրութեանց մէջ, թէ ինչպէս զգացուած է այն արհամարհանքին համար որ իրեն նկատմամբ ցոյց տրուած է, բայց ի պատիւ իրեն պէտք է ըսել թէ իր գանգատներուն մէջ իսկ, չի դադրիր արդար ըլլալէ հանդէպ իր բարեկամին տաղանդին և մեծ արժէքին (Gibbon Դլ. Իէ)։

Բարսեղ մեռաւ 379ին(1)։ Իրմէ իբր գրական վաստակ կը մնան մեզի բազմաթիւ նամակներ և ճառեր, որոնց մէջ նշանաւոր է ուսանողներու ուղղուած ճառը, թէ՛ ինչպէս օգուտ քաղելու է դասական հեղինակներու ընթերցումէն (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212)։

Ս. Բարսեղի մահէն յետոյ Ս. Գրիգոր ձգեց իր առաջնորդական տխուր վիճակը դառնալու համար Նազիանզ իր հօրը քով, որուն տարիքին եպիսկոպոսական պաշտօնը շատ ծանր կը կշռէր։ Երբ հայրը մեռաւ Ս. Գրիգոր մերժեց անոր պաշտօնը ստանձնել և քաշուեցաւ Իսաւրեան Սելեւկիա։

Հոն կ'ապրէր, երբ Վալենտիանոս Ա. կայսրը (364–375) մեռաւ և Կ. Պոլսոյ ուղղափառները իրեն առաջարկեցին գալ առաջնորդել իրենց տկար և դողդոջուն Եկեղեցին, Թէոդոս կայսեր օրով։

Հոն, երկու տարի (379–380) հանդուրժեց Կ. Պոլսոյ մէջ ամենազօր Արիոսականներու նախատինքներուն և բռնութիւններուն։ Թէեւ բոլոր տաճարները հերետիկոսներուն ձեռքն էին, ճնշուած հասարակութիւնը կը կատարէր իր խորհուրդները մասնաւոր պզտիկ տան մը մէջ։ Օր մը անոնք այդ տան մէջ յարձակում կրեցին քարերու և գաւազաններու հարուածներով։ Այդ խառնակութեան մէջ մարդ մը սպանուեցաւ։ Կը կարծուէր թէ Թէոդոս (379-395) արդարութեամբ պիտի վարձատրէր Գրիգորի յարատեւ ջանքերը զայն պահելով պետը այն Եկեղեցւոյն որ ան պահպանած էր գէշ օրերու մէջ։ Բայց Կ. Պոլսոյ պէս կարեւոր աթոռ մը կը գրգռէր ախորժակը շատ ցանկացողներու։ Քանի մը ամիս յետոյ գումարուած ժողովի մը մէջ, յարձակեցան Գրիգորի ընտրութեան դէմ։ Գրիգոր Աստուածաբան զզուած այն դաւերէն որուն ժողովը թատր հանդիսացաւ, տուաւ իր հրաժարականը և դարձաւ իր ծննդավայրը, (Asie Meneure էջ 486), քաշուելով առանձնութեան մէջ՝ մարդասիրութեամբ և գրական լուրջ գործունէութեամբ պարապելով մինչեւ իր մահը 389ին կամ 390ին։

Գրիգոր Աստուածաբան կը գրէր դիւրութեամբ արձակ ու չափով։ Իր 45 ճառերէն նշանաւոր են երկու արձանականները՝ Յուլիանոս Ուրացողին դէմ։ Ժամանակին պատմութեան համար կարեւոր են նաեւ

(1) Ս. Բարսեղի վրայ շահեկան ուսումնասիրութիւններ գրուած են շատերէ։ Ասոնցմէ յաջողագոյններէն մին է P. Allardի «Saint Basile» գործը, որուն մէկ ամփոփումը ըրած է Տիրայր Վրդ. Մարգարեան յօդուածաշարքով մը (տես ԼՈՅՍ 1905)։



իր 242 նամակները (մասնաւորապէս Թղ. Լ.)։ Իր բազմաթիւ չափականաց մէջ կը գտնենք ճշմարիտ բնական զգացում մը և խորին փիլիսոփայական միտքէ մը յուսաւորուած՝ աստուածապաշտութիւն (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 213–214)։

Գրիգոր Նիւսացի՝ Բարսեղի եղբայրը, նոյնպէս հռետոր, ծնած էր 331ին։ Թէպէտ իր բոլոր եղբայրները միայնութեան կենաց փափաքով աշխարհէ հրաժարած էին, բայց Գրիգոր՝ նախ ամուսնացաւ և յետոյ երբ կրօնաւորուեցաւ փոխադարձ համաձայնութեամբ իր կնոջմէն բաժնուեցաւ։ 372ին եղաւ եպիսկոպոս Նիւսայ, բայց վար առնըւեցաւ 375ին Սիւնհոդոսէն՝ որ Դեմետրիոս կուսակալին իշխանութեան տակ գումարուած էր, Արիանոսեանց և Ալթանասեանց կռիւներու պատճառով։ Թէոդոս կայսրը յետոյ զինքը կրկին պատուոյ կոչեց (378ին)՝ Անտիոք գումարուած ժողովի մը որոշումով։ Արաբիոյ և Պաղեստինի եկեղեցիներուն գործերը կարգաւորեց հոն տեղերը շրջելով, և 381ին, 382ին և 391ին մասնակցեցաւ Կ. Պոլիս գումարուած երեք ժողովներու։ Մեռաւ իբր 394ին։

Ժամանակին հանգամանքները կը պարզէ իր ճառը ընդդէմ վաշխառուներու, քրիստոնէից դիրքը հանդէպ հեթանոսներու և այլակրօններու։ Իր «Ճառն Ընծայութեան»ի մէջ, յօրինուածաբար կ'ապացուցանէ քրիստոնէութեան գլխաւոր վարդապետութիւնները։

Այս երեք Կապադովկիացի Ս. Հարց հսկայական հռչակին՝ զոր վայելած են իրենց ժամանակակիցներուն և կրօնակիցներուն քով, համապատասխան չէ իրենց գրութեան ներքին արժէքը ըստ գերման քննադատի մը՝ Քրիստի (տես Christ. Griech. Literaturgeschichte, էջ 741)։

Ընդհակառակը Բարտենհեվէր (Bardenhever. Patrologie. Freiburg 1894) երեք Կապադովկիացիները կը կոչէ Կապադովկեան Եկեղեցիին երկնից շքեղ եռաստղը։

Ուրիշ հեղինակ մը, նոյնպէս գերման, Max Berger (Progr. Rosenheim. 1897-8 էջ 34. die Schöpfungslehre des hl. Basilius), խօսելով Բարսեղի արարչութեան վարդապետութեան մասին կ'ըսէ թէ եթէ Բարսեղ տասներկու դար ետքն ապրած ըլլար, Կոպեռնիկոսի և Գալլիլէոսի մեծ գաղափարները քրիստոնէութեան բարիքն եղած կ'ըլլային (տես Zimmerer, ՀԱ. 1900, էջ 213)։

Այս երեք հռչակաւոր ժամանակակիցներուն կեանքը երբ քննենք, կը գտնենք՝ բացի Աստուածաբանական մեծ կռիւներէն՝ Արիանոսութեան և Յուլիոս Ուրացողի դէմ, իբրեւ նկարագիր իրենց ժամանակին՝ միտում դէպի ճգնաւորական կեանք, ցանկութիւն աշխարհէն հեռանալու և մարդերէն հեռու անապատը քաշուելու և ձգտում՝ մենաստաններ ու վանքեր՝ կրօնական ներհայեցողութեան վայրեր ստեղծելու։

Բովանդակ Հռոմէական Ասիոյ մէջ մինչեւ Սասանեանց երկիրն արդէն Դ. դարուն սկիզբէն կային՝ ինչպէս ապացուցուած է, առանձին ճգնաւորներ, այսպէս Բիւթնեան Ողիմպոսի վրայ՝ Եւտիքիանոս և Աւքսանոն (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212–3)։

Քիչ յետոյ երեւան կուգան թէ՛ մենաստաններ և թէ՛ ցրուած հիմնարկութիւններ՝ որոնք եգիպտական ճգնարաններու (laura) նման էին այսինքն բազմաթիւ խրճիթներ՝ իրարմէ որոշ հեռաւորութեամբ կանգ-

նուած(1)։ Ճգնաւորները որ անոնց մէջ կ'ապրէին «խոտաճարակ» կը կոչուէին, վասնզի կերակուրի ժամանակ մանգաղով կ'երթային խոտ քաղելու, որ իրենց միակ «խոտաբուտ» սնունդն էր։

Ասորական կրօնաւորներէն կանուխէն նշանաւոր էին Եգեսիոյ կրօնաւորները, ինչպէս Յուլիան դիւահալածը։ Հայաստանի, Պափլագոնիոյ, և Պոնտոսի համար կրօնաւորութեան գլխաւոր զարգացուցիչն եղաւ խստաբարոյ Եւստաթիոս՝ Սեբաստիոյ եպիսկոպոսը, Կապադովկիոյ և Գաղատիոյ համար՝ Ս. Բարսեղ Մեծ, որ ընդհանրապէս արեւելեան ճգնողական կենաց հաստատուն ձեւը տուաւ։ Այս ցուրտ երկիրներուն մէջ՝ ուր առանձին ցրուած խրճիթներու մէջ բնակիլը դժուար էր, կազմուեցան մենաստաններ՝ գլխաւորաբար քաղաքներու կամ գիւղերու մէջ։

«Թէեւ մենակեաց կենաց վերանորոգիչն եղաւ Ս. Անտոն(2), թէեւ Ս. Պա-
«քոմիոս(3) յաւագոյն ձեւ մը տուաւ, Ս. Բարսեղ է որ առաջին անգամ վանա-
«կանութեան վերջին կատարելագործութիւնը տուաւ՝ պարտաւորելով այս կեանքն
«ընդունողները կերպական ուխտերով» (Moutalembert, Les moines d'occident, Paris. 1892, էջ 105. տես նաեւ Hélyot. Hist. des ordres monastiques. I. C. 13. F. Bluteau. Hist. des moines d'Orient. էջ 305, 402)։

Իր 375ին գրած շրջաբերականին մէջ (Թղ. Մէ.) ուր կը պաշտպանէ ինքզինքը Նէոկեսարացւոց թշնամութեանց դէմ, տակաւին իբր նոր երեւոյթ միայն կրնար նշանակել Եգիպտական վանականութիւնը։ Բարսեղ յատկապէս զգուշացուցած էր այն անապատաւոր «անվկայ կեանքէն» (ἀμάρτυρος βίος) որ շատ կասկածէ ազատ չէ։ Իր ճոխութիւնը և իր յօրինած կանոններուն ազդեցութիւնը գերիշխող եղան հետագայ ժամանակի կրօնաւորական կենաց կազմութեան համար, այնպէս որ Փոքր Ասիոյ մէջ «վանական» կեանքը յաղթեց հնագոյն ճգնաւորական (միայնաւորական) կենցաղին։

Սակայն այս վերջինը դեռ կը շարունակուէր՝ իր հին, անկազմակերպ ձեւերով, և մինչև անգամ վանական կրօնաւորութենէն բարձր կը համարէր ինքզինքը։

Այս կարգէն էին չիրմարնակները՝ անոնք որ դամբաններու մէջ կ'ապրէին (μεμορῖται կոչուած), սիւնակեացները՝ հետեւողութեամբ Սիմոն Սիւնակեացի (στηλίτης) և խոտաճարակները (βόσκοι, Silvestres),

(1) Վանական հիմնարկութեանց հնագոյն ձեւն էր աս, ուր ամէն անձ կ'ապրէր յատուկ խցիկի, խրճիթի, celullaի մը մէջ, սակայն հասարակաց էր միշտ եկեղեցին, հիւանդանոցը և ձեռագործի գործարանը, յաճախ նաեւ սեղանատունը։

(2) Անտոն Եգիպտացին հարուստ և ականաւոր մարդ մըն էր, որ իր ինչքն աղքատներուն բաժնելէ յետոյ, քաշուեցաւ Գերեզմանոց մենաւորութեան տեղին և առաջինն եղաւ որ խորհեցաւ անապատականները ժողվել և ենթարկել աշխատութեան, աղօթքի և ընդհանրական մեծաւորի մը հսկողութեան։ Մեռած է 356ին 105 տարեկան։

(3) Անտոնի աշակերտն էր Պաքոմիոս որ հիմնադիրը եղաւ բուն վանական կեանքի։ Ան ժողովեց մօտ 3000 վանականներ Նեղոսի մէկ կղզիին մէջ։ Ինքն եղաւ հիմնադիրը առաջին կանանց վանքին, որ կ'անուանէին Նոն (=Եգիպտական բառ, մաքուր, սուրբ նշանակութեամբ)։



որոնք մասնաւորապէս Հայաստանի հարաւային լեռները կը բնակէին։

Բարսեղ Մեծ՝ իր ճամբորդութեան ատեն, Ասորիք և Եգիպտոս, տեսած կեանքը (Թուղթ Ա, ՄԻԲ. գլ. բ. գ) մտցուց նաև Փոքր Ասիա։ Պոնտոսի Իրիս գետին վրայ իր ունեցած հայրենական կալուածներու մէջ 359ին հիմնեց վանք մը և շուտով՝ երբ Կեսարիոյ արքեպիսկոպոս եղաւ, նման հիմնարկութիւններ շինուեցան թէ՛ յիշեալ գաւառին և թէ՛ Կապադովկիոյ մէջ։ Իր Եմմելիա մայրն ու Մակրինա քոյրը յիշեալ վանքին մօտ՝ գետին միւս ափը՝ հիմնեցին առաջին կուսաստանը կամ կուսանաց վանքը։ Ս. Բարսեղ կրօնաւորութեան կենաց երկու կանոններ յօրինեց. ընդարձակ և համառօտ։ Իր կարգին գլխաւոր առանձնայատկութիւնն է որ՝ մենակեցութեան հակառակ՝ աւելի կարեւորութիւն կու տայ հասարակաց կեանքին, այսինքն վանականութեան։ Երբ 379ին մեռաւ՝ բովանդակ Արեւելքի նահանգներն եւ յատկապէս Կապադովկիա՝ մուտք գտած էր վանականութիւնը։ Կազմակերպութիւնը աւելի զարգացաւ վանքերու (κοινόβιον, coenobium) հիմնարկութեամբը, ուր կրօնաւորաց բնակութիւնները խմբուած կ'ըլլան պարսպապատ գետնի մը վրայ։ Արեւելքի մէջ թէ՛ աւելի ազատական մենաստանի ձեւը և թէ խստագոյն վանքի ձեւերը միշտ շարունակուած են, բայց վերջինն երթալով գերիշխող եղած է։

Շուլցէ վանքերու շինութեանց նախատիպը կը համարէ եգիպտական տունը, մէկ բակով կամ գաւիթով, այն տարբերութեամբ որ այս բակը կա՛մ առջեւը կը գտնէր՝ երկու կողմը աջ ու ձախ շարուած խցիկներու շարքը, կամ բակին չորս կողմը կը պատէին խցիկները (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212-215)։

Բարսեղ յաճախ կը քաշուէր կրօնաւորական կեանքի առանձնութեան մէջ իր պոնտական հայրենիքը, և բանաստեղծական ոգեւորութեամբ կը նկարագրէր իր Իրիսի ափանց վրայ վարած մենակեցութիւնը։ Իր պոնտական հայրենեաց այս ճշմարտապէս բանաստեղծական աւիւնով լի նկարագրութիւնը շատ տեղ կը յիշեցնէ Ստրաբոնի՝ Բարսեղի մեծ հայրենակիցին՝ Ամասիոյ իր հայրենեաց մասին ըրած նկարագրութիւնը։ Այս ներանձնական և զոհողութեան կեանքն է որ Ս. Բարսեղը մղած է ողորմածասիրական գործունէութեան։ Այնպէս որ երբ Կեսարիա սով տիրեց, Բարսեղի մարդասիրական գործունէութեան չափ չի կար։ Ամէնուն բաշխեց դրամ ու կերակուր, ի միջի այլոց արջառի և ձկան դեռ մեր օրերն ալ հռչակաւոր «մխած» միսը (ταριχευόμενον κρέαρ, աղած միս. տճ. պաստրմա) և շինեց մեծ աղքատանոց մը և հիւանդանոց։

Յակոբ Մծբնացի ալ Մեծին Բարսեղի հռչակաւոր ժամանակակիցն էր, իր երիտասարդութեան ատեն նոյնպէս խիստ ճգնաւորական կեանք մը վարած է լեռներու և անձաւներու մէջ, երբ Մաքսիմինոսի հալածանքէն կը տառապէր երկիրը, ինչպէս կը վկայէ իր կենսագիրը Թէոդորետոս։

Գրիգոր Նիւսացի ալ՝ Ս. Բարսեղի կրտսեր եղբայրը, երբ Արիանոսները յաջողեցան Վաղէս կայսեր աքսորել տալ զինքը, մենակեաց կեանք մը վարեց մինչեւ 378 տարին։ Նոյնպէս իր կրտսերագոյն եղբայրը Պետրոս, և Ս. Եփրեմ որ 372ին այցելութեան եկաւ Բարսեղի։ Բարսեղի և Գրիգորի հետ վանական կեանք կը վարէր ի Պոնտոս նաև Ամփիլոքիոս, մինչեւ որ 373ին Իկոնիոնի եպիսկոպոս եղաւ։

Գրիգոր Նազիանզացին ալ երեք անգամ անապատ քաշուեցաւ՝ իր եպիսկոպոսանիստ Սասիմայի հակառակութիւններէն ազատելու համար և Կ. Պոլսոյ Պատրիարք ընտրուելէն առաջ, հինգ տարի ապրած էր Իսաւրեան Սելեւկիոյ Ս. Թեկղի վանքին մէջ։ Իր եղբայրը Կեսարոս՝ որ Յուլիանոսի և Վաղէսի անձնական բժիշկն էր, 368ին իր մահէն ետքը բոլոր իր գոյքը թողուց աղքատներուն։

Կեսարիոյ Հելլադիոսի յաջորդը Փարետրիոս իր վանականները գրգռած էր Յովհաննու Ոսկեբերանին դէմ, որ այն ատեն հոն էր, ինչպէս ինքն մանրամասն կը պատմէ։

Մելիտենոյ Լետոիոս (Letoios) եպիսկոպոսը հրով և սրով ջնջեց Մեսալեանց հերետիկոսական վանքերը (Թէոդորետ. Եկեղ. Պատմութ. Դ. ժա.)։ Ալանդաւոր Պաւլիկեանք երբ հալածանքին ենթարկուեցան՝ անձաւավանքերը փախան։

Այսպէս եկեղեցական պատմութեան բոլոր վկայութիւնները մատնանիշ կ'ընեն մեզի միշտ վանքն ու վանական կեանքը 'ի Կապադովկիա։

Երկրին և հողին հանգամանքներն ալ շատ նպաստաւոր էին անձաւաշինութեան, ինչպէս է նաեւ այսօր։

Այս ճգնաւորներն իրենց բնակարաններուն այլ եւ այլ անուն կու տային. բայց գլխաւորաբար կը գտնենք առ հասարակ այս կոչումները՝ անապատք (ἔρημοι), անձաւք (σπήλαια), ծերպք (ὀπαί), միայնարան կամ ճգնարանք (λαῦραι), վանք (κοινοβια), մենաստան (μοναστήρια), խոկարան (φροντιστήρια)։ Իսկ վանականներու զբաղումն էր կողով հիւսել, մանել, երկիր գործել և նաւակ շինել։ Իրենց բնակութեան վայր կ'ընտրէին մասնաւորապէս Ալիսի, Իրիսի և անոնց բազուկներուն եզերքները, Արգէոսի և Տաւրոսի կողերը, ուր մեղմ կլիմային պատճառով կրնային իբր սորամուտ կամ տրոգղոդիտ ապրիլ։

Արուեստական աշխատութիւն և հիւրասիրութիւն կը ծաղկէր իրենց քով, ինչպէս Արեւելքի և Արեւմուքի բոլոր սուրբ տեղերը։

Լեւիդիսի յիշած բազմաթիւ վանքերէն միայն չորսը մինչեւ մեր օրերն ալ ծաղկած էին, այսինքն՝ նոյն Լեւիդիսի բնակարանն ի Զինճիտէրէ, Ս. Յովհ. Կարապետի ( = Պրոդրոմոս) վանքը ի Փլաւիանա, Ս. Հեղինէի հիմնարկած վանքն Հրեշտակապետ (τῶν Ταξιαρχῶν) այսօր Եանարտաշ, Հայոց մեծ վանքը՝ Ս. Կարապետ, Ս. Դանիէլ, որոնց ամէնն ալ Արգէոս լերան ոտքն են։

Սակայն, անհետացած, մարած և կործանուած է այն կրօնական կեանքն՝ որ երբեմն կ'եռար Կապադովկիոյ միւս վանատեղիները, ի Գէօրէմէ, Սովանդոս-Կիզիստրա (Գարահիսար), Մակելլոս, Նիւսա, Նազիանզ, Պառնասոս, Մոկիսոս և շատ ուրիշ տեղեր, զորս մի առ մի կը յիշէ Լեւիդիս Կապադովկիոյ տասն եկեղեցական շրջաններուն բաժանման կարգաւ, և որուն մասին կ'ըսէր Գրիգոր Նիւսացի թէ ուրիշ ոեւէ երկիր, այնչափ տաճարներ չէ կառուցած որչափ իր հայրենիքը։

Նոյն վանքերուն մէջ մշակուած գեղարուեստին մասին ալ այլ եւ այլ տեղեկութիւններ կան։ Յովհ Ոսկեբերան հիացմամբ կը ներբողէ Խաչին փառաւորութիւնը գեղարուեստի միջոցաւ (ձառք Ա. 571), Եւսեբիոս՝ Կոստանդիանոսի վարքին մէջ՝ մարտիրոսաց փառաւորումը, Աստերիոս Ամասիացի՝ սրբուհւոյն Եւփեմիայի նկարը, Գրիգոր



Նիւսացի՝ Տեառն մերոյ չարչարանաց նկարները, և աւելի որոշ՝ մարտիրոսաց վկայութեանց պատկերացումները (Բան առ Թէոս.)։

Անհետացած ու մարած են նաեւ չքեղ ուխտերն ու տօները, որոնցմով լի են Ս. Հարց նամակներն ու ճառերը։

Զատիկ, Հոգեգալուստ, Համբարձում, Ամանոր, և սրբոց Գորդիոսի, Մամասայ, Մերկիւրիոսի և Ղունկիանոսի տօները՝ երկար պահքէ ետքը՝ մեծ չքեղութեամբ կը կատարուէին ջահաւորեալ կամ լուսավառութեամբ (λαμπροφορία ἢ φωταγωγία)։

Կապադովկիա իրաւմամբ ուղիղ հաւատոյ և քրիստոնէական հաւատարմութեան դասական երկիրն էր, ինչպէս արդէն գովութեամբ կը դրուատէ Նազիանզու Աստուածաբանը (Ճառ Ի.)։

Եթէ ուրիշ երկիրներ մէկ մեծ սուրբով կը պարծին, ինչպէս Եգիպտոս՝ Աթանասով, Ասորիք՝ Յովհաննէս Ոսկեբերանով, Իտալիա՝ Ամբրոսիոսով և Ափրիկէ՝ Օգոստինոսով, Գամրաց երկինքը կը փայլի եօթնաստեղով մը՝ Փիրմիլիանոս, Գր. Աստուածաբան, Ղեւոնդիոս, Բարսեղ Մեծ, երկու Գրիգորներ (Նազիանզացի և Նիւսացի) և Ամփիլոքիոս Իկոնիոնի, առանց հաշուելու Ապողինարոսը(1) (Apollinaire) և Եւստաթիոս Սեբաստիացին որոնք ինկած են հերետիկոսութեան մէջ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 225–228)։

Կրնանք ըսել թէ այս մարդոց հեղինակաւոր ազդեցութիւնը նոյնքան նպաստած է քրիստոնէական հաւատքին վերջնական յաղթանակին համար որքան կայսրութեան տիրական հեղինակութիւնը (Asie Mineure, էջ 485)։

Մեծն Թէոդոսի իշխանութեան (375–395) ատեն, մասնաւորապէս 385էն յետոյ, սկսաւ ամէն կողմէ, միացեալ զօրութեամբ կայսեր, եպիսկոպոսներու և վանականներու, կանխամտածուած և ծրագրեալ յարձակումը, որուն արդիւնքն եղաւ Արեւելքի մէջ քանդումը բովանդակ հեթանոսական պաշտաման։

Այս բեղմնաւոր գործունէութեան ժամանակամիջոցին է որ Կապադովկիացի երեք մեծ Ս. Հարք կենսունակ քրիստոնէական կեանք մը ստեղծեցին իրենց ծննդավայր նահանգին մէջ, յաղթական մուտք տուին վանականութեան, ինչպէս նաեւ պարզեցին թէ ինչպէս հեթանոսական զրոյցներով և հնութիւններով այնչափ ճոխ երկրի մը մէջ հնութեան գրեթէ ամէն հետք անհետ եղաւ (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212)։

Ըստ Zimmererի «սխալ կարծիք մըն է թէ Սելջուկեանք միայն եղած են առաջին անգամ Փոքր Ասիոյ ճնութեան յիշատակարանաց աւերման գլխաւոր պատճառը։» (Տես ՀԱ. 1900, էջ 138)։

Պետութեան և Եկեղեցւոյ միացեալ ջանքերով Քրիստոնէական

---

(1) Apollinaire կրտսեր եպիսկոպոս Լաոդիկէի, հիմնադիրն է Ապողինարեան հերձուածին, որ կը մերժէր Քրիստոսի մարդեղութիւնը։ Բանը միացած չէր մարդկային հոգւոյն այլ ուղղակի մարմնի մը։ Այս վարդապետութիւնը 362ին դատապարտուեցաւ Աղեքսանդրիոյ Սինոդէն, և վերջապէս Կ. Պոլսոյ Բ. ժողովէն՝ 381ին։

Ապողինարեանութիւնը, իր հիմնադիրին մահէն յետոյ ձուլուեցաւ համանման դաւանանքներու՝ բայց մասնաւորապէս Եւտիքեան վարդապետութեան մէջ։

կրօնին յաղթանակը ապահովուած էր երբ Թէոդոս մեռաւ 395ին։

Տակաւին Հեթանոսութիւնը բոլորովին արմատախիլ չէր եղած, սակայն տիրող ընդհանուր ապականութեան մէջ քրիստոնէութիւնը իր մաքուր բարոյականով կը հակազդէր բարքերու անկումին և ընդհանուր անբարոյացման դէմ։

Մեծն Թէոդոս իր իշխանութեան շրջանին վերստին կը կռէր Հռոմէական մեծ կայսրութեան հիմէն սասանած տիեզերական իշխանութիւնը, բարբարոսներու արշաւանքները վանելով պետութեան սահմանագլուխներէն և ընկճելով Արիոսականութիւնը և այլ հերձուածները, ինչպէս նաև պայքար բանալով Հռոմէական ազնուապետութեան մէջ պահպանուած հեթանոսական հաւատքներու դէմ, և հիմերը դնելով, իր ամէն հպատակներուն եղբայրացումին և միացումին, շնորհիւ պետական կրօնքին և միակ դաւանանքին՝ որ կ'ուզէր հարկադրական դարձնել։

Սակայն դժբախտաբար իր մահէն (395 յունուար 17) յետոյ կայսրութեան միութիւնը չկրցաւ պահպանուիլ և ան բաժնուեցաւ երկուքի՝ «Արեւելեան» և «Արեւմտեան» անուններով։

Անոնք ժամանակի ընթացքին պիտի ստանային տարբեր ձգտումներ և տարբեր հակումներ, և բոլորովին իրարմէ պիտի բաժնուէին, կրօնքով, լեզուով և դաստիարակութեամբ։

## Բ.

# ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՀԱՅԵՐԸ ՀՌՈՄԷԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ

**(17 — 395)**

---

## Ա.

### ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՀԱՅԱՑՈՒՄԸ

Ստրաբոնի տուած թանկագին տեղեկութիւնները իր ժամանակին մասին, (տես վերը, էջ 210–220) մեզի որոշ գաղափար մը կու տան թէ Հայ ցեղը ինչպէս հայացուցած էր երբեմն Կապադովկիոյ մաս համարուած հողամաս մը և զայն Հայաստանի աշխարհագրական սահմաններուն մէջ առած։

Ան Կապադովկիան արեւելքէն սահմանակից կը համարէր Հայաստանի, Կողքիսի և «միջանկեալ այլեւայլ լեզուներով» ազգերու։

Այս վերջին բացատրութիւնը չափազանց յատկանշական է, վասնզի անիկա կը մատնանշէ հետաքրքիր իրողութիւն մը։ Հայաստանի և Կապադովկիոյ «միջանկեալ» երբեան կու գան այլեւայլ լեզուներով ազգեր, որոնց մէջ անշուշտ առաջին տեղը կը գրաւէին Կատաւոնացիքը, որոնք նոյնիսկ Ստրաբոնի բառերով «Սկզբանէ ի վեր անջատ եւ Կապադովկիացիներէն տարբեր ժողովուրդ մը կը նկատուէին» և որոնք մինչեւ Հայաստան՝ Եկեղեաց գաւառ կը տարածուէին։



Ստրաբոն Հայաստանի սահմանները տուած ատեն, (Դիրք ԺԱ. գլ. ԺԴ.) կ'ըսէ թէ Հայաստան արեւմուտքէն եզերուած է Տիբարինացիներու երկրով, յետոյ Պարիադրէս (Paryadrès) սարով և Սկիտիէսով (Skydisès) մինչեւ Փոքր Հայք և Եփրատի հովիտով, որ կը շարունակուի մէկ կողմէն Հայաստանի և միւս կողմէն՝ Կապադովկիայի Կոմմագէնէի մէջ։

Ուրեմն Ստրաբոն կ'ընդունի երկու Հայաստաններու գոյութիւնը, Մեծ և Փոքր կոչումներով(1)։

Անիկա կը նկարագրէ նոյնիսկ առանձին Փոքր Հայաստանը, որ արեւմուտքէն եզերուած ցոյց կու տայ Անտիտաւրոսով, և զայն դրացի և նոյնիսկ երբեմն միացեալ ցոյց կու տայ Խաղտեաց աշխարհին, (տես վերը, էջ 196–197)։ Եւ ինչպէս որ Կապադովկիոյ համար կ'ըսէ թէ հոն կը խօսուէր մէկ լեզու, երկու Հայաստաններուն համար կ'ըսէ «Երկիրներ, որոնց բնակիչները շնորհիւ այդ միութեան, կը խօսին հիմա միեւնոյն լեզուն, Հայերէն»:

Ստրաբոնի ներկայացուցած այս աշխարհամասը, Ծոփաց աշխարհին պէս ունեցած էր իր բնիկ թագաւորները, սկսեալ 190էն (Քր.է առաջ), այսինքն այն թուականէն ուր Սելեւկեանց թագաւորութիւնը կը պարտուէր Հռոմէն և անոր ծայրագաւառներուն մէջ ապրող ժողովուրդները իրենց բնիկ իշխաններուն կամ Անտիոքոսի կողմէ կարգուած կուսակալներուն շուրջը բոլորուած, Հռոմի իսկ քաջալերութեամբ իրենց անկախութիւնը ձեռք կը բերէին։ Այս կերպով կազմուած Փոքր Հայոց թագաւորութիւնը կը ջնջուէր Միհրդատ Եւպատորէ և կը վերահաստատուէր Պոնպէոսէ (տես էջ 198)։

Օգոստոս զայն 30ին (Քր.է առաջ) Մարաց Արտաւազդ թագաւորին տալէ յետոյ կը պարգեւէր Կապադովկիոյ Արքեղայոս թագաւորին (տես էջ 198), 17ին վերստին առանձին թագաւորութիւն մը դարձնելու համար։

Թրակիոյ Կոտիս Ե. թագաւորի(2) (19 Քր.է յետոյ) իշխանութեան տակ, որ իր վեհապետութիւնը կը պահէր տակաւին 42ին, վասնզի այդ թուականին Կոտիսէն շահուած Հայ Նախարարներ Մեծ Հայոց թագը նուիրել կը խորհին իրեն, սակայն Հռոմի կայսրը Կղաւտիոս (41–54) կ'արգիլէր։

---

(1) Փլորոս, Միհրդատ Պոնտացիին համար կ'ըսէ թէ «ամենայն զօրութիւն հզօր թագաւորին էր սպառեալ, այլ աղէտն յաւելուին զքաջութիւն նորա: Դարձաւ յազգն արուարձանեայս, եւ առնէր հաղորդ զաջողութեան իւրում զամենայն արեւելս եւ զհիւսիսի: Տանէր զՎիրս, զԿողբս, զԱղուանս և ԶՀԱՅՍ, ԶԵՐԿՈՍԵԱՆ»: (Գար. ԹՆՆ. Պատմ, Բ. հատ. էջ 118)։ Այս երկու Հայքերը կրնան ըլլալ ակնարկութիւն Մեծ Հայքի և Ծոփաց թագաւորութիւններուն և կամ Մեծ և Փոքր Հայքերուն, յինչ որ ճշդել դժուար է քանի որ Ծոփաց և Փոքր Հայոց թագաւորութիւնները այդ օրերուն կը գտնուէին համանման պայմաններու մէջ երկուքն ալ զրկուած ըլլալով անկախութենէ։

(2) Ոմանք Փոքր Հայոց վրայ Կոտիս Ե.ի թագաւոր կարգումը կ'ընծայեն կայսրս Կալիգուլայի (37–41) ինչ որ շատ հաւանական չէ ինչպէս կը փաստէ Տէր. Ալեքսանդրեան (Պատմ. Սեբաստիոյ, էջ 46)։

Պատմութիւնը կը յիշատակէ թէ Ներոն (54–68) Փոքր Հայոց թագաւոր կարգած է 55ին, Արիստոբոլոս (կամ Արիստոբուղ) անուն մէկը, որ Քաղկիդի Հերովդէս թագաւորին որդին էր։

Ասոր յաջորդած է (60–62) կ'ենթադրուի իր մերձաւոր ազգականը Տիգրան, Մեծ Հայաստանի 63ին վտարուած թագաւորը, որ անժառանգ մեռած ըլլալուն համար Վեսպասիանոս կայսրը (69–79), Փոքր Հայքը Հռոմէական ստացուածքներուն միացուց և Կապադովկիոյ նահանգին ենթակայ գաւառ մը դարձուց գաւառապետ Պրետորի մը իշխանութեան տակ։

Այս առթիւ Հռոմայեցի պահակազօրք դրուեցաւ Մելետինէի մէջ, և այս գաւառին միւս գլխաւոր քաղաքները (Դեր. Ալեքսանդրեան, Պատմ. Սեբաստիոյ, էջ 47)։

Ասկէ յետոյ Փոքր Հայք միշտ Հռոմէական գաւառ մնաց, թէպէտ Պարթեւները և ապա Պարսիկները, ամէն անգամ որ Հայաստանի մէջ կացութեան տէր դարձան, երբեմն նոյնիսկ Հայոց նիզակակցութեամբ, առաջ քալեցին իրենց բանակներով և մտան նոյն երկիրը, ասպատակեցին և աւերեցին, սակայն բնաւ չկրցան հոն մնալ և իրենց տիրապետութիւնը եթէ ոչ յաւերժացնել գոնէ ժամանակի մը համար տեւականացնել։

Չափազանց հետաքրքրական իրողութիւն մըն է որ Փոքր Հայք որուն նախապէս շատ սահմանափակ շրջան մը ընդգրկելը որոշ է, ի վնաս Կապադովկիոյ կ'ընդարձակուի Հռոմէական տիրապետութեան շրջանին։

Ստրաբոնէն ժամանակով առնուազն մէկ դար յետոյ ապրող աշխարհագիր մը Պտղոմէոս, որ մօտաւորապէս Ք.ե 150 տարի յետոյ գրած է իր աշխարհագրութիւնը Փոքր Հայքը կը բաժնէ հետեւեալ կերպով (Է. գլ.)։

«Փոքր Հայք, որուն հիւսիսայնագոյն մասը կը կոչուի Օրպալիսէնէ եւ անկէ վար եղածը Տէտուլանա, որուն կը յաջորդէ Երեզիքա, որուն վարի կողմն է Հորսէնա եւ հարաւայնագոյն մասը Հորսէնայէն վար կուգայ Որպեսենէ(1)»:

Քաղաքներուն անուններէն, որոնք Պտղոմէոս կը յիշատակէ Եփրատի եզերքը և երկրին ներքին կողմերը լեռներուն վրայ, կրնանք հետեւեցնել՝ թէ այս հինգ գաւառները՝ որոնք կը գտնուին Եփրատի արեւմտեան կողմը կամ աջ եզերքը, Կիւմիւշխանէի սահմանէն մինչեւ Մելաս, հիւսիսէն դէպ հարաւ կը տարածուէին(2)։

(1) Ըստ Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեանի (տես Պատմ. Սեբաստիոյ, էջ 17) Օրպալիսէնէ կամ Օրպալիսինա կը համապատասխանէ Դարանիսարի շրջանակին, Տէտուլանա՝ Ագշէհրապանի, Երեզիքա՝ Կէրճանի, Հորսէնա՝ Ակնայ և Որպէսենէ՝ Արաբկիրի և Արկաւայի։

(2) Հետաքրքիրներ աւելի յստակ գաղափար մը ունենալու համար Փոքր Հայքի երբեմնի սահմաններուն վրայ, կրնան դիմել Prof. W. Ramseyի կազմած մէկ տախտակին (տես The Historical Geography of Asia Minor, էջ 71) ուր ցոյց կու տայ Փոքր Հայքի քաղաքները յիշատակուած հնութեան հեղինակներէն։ Հոն որոշ կը տեսնուի թէ Փոքր Հայք առաջ որքան պզտիկ տարածութիւն մը ունէր և թէ ինչպէս Կապադովկիա կը հասնէր մինչեւ Եփրատ և վերջէն Փոքր Հայք նկատուած հողամասերը կը պատկանէին Կապադովկիոյ։



ժամանակի ընթացքին մէջ թող զարմանալի չթուի եթէ ըսենք թէ Ստրաբոնի կողմէ յիշուած Կապադովկեան 10 նահանգներէն եօթը՝ այսինքն

1. ՄԵԼԵՏԻՆԷ . . . . . . . . . . . (= Մալաթիա)
2. ԿԱՏԱՒՈՆԻԱ . . . . . . . . . . (= Կէօքսուն, Հաճըն, Զէյթուն)
3. ԼԱՒԻԱՍԻՆԷ (կամ ԼԱՒԻԱԼԻՋԻՆԷ) (= Կիւրին, Թոնուզ, Ազիզիյէ)
4. ՍԱՐԳԱՐԱՒՍԻՆԻ . . . . . . . . (= Նէաշէհիր)
4. ՍԱՐԱՒԻՆԷ (կամ ԱՐԱՒՍԻՆԷ . . (= Քեահթա)
6. ՔԱՄԱՆԵՆԷ կամ ԿԱՄԵՍԻՆԷ) . (= Տիվրիկ, Զառա)
7. ՄՈՐԵՄԵՆԷ . . . . . . . . . . (= Ագտաղ Մատէն)

եւս նկատուեցան Փոքր Հայոց մասերը։

Այսպէս ուրեմն ի վնաս Կապադովկիոյ ընդարձակուեցաւ Փոքր Հայքը որ նախապէս փոքր տարածութիւն մը միայն ունէր։

Դիոկղետիանոս կայսրը (284–304) որ բոլորովին վերակազմեց Հռոմէական կայսրութիւնը նոր վարչական բաժանումներով (տես վերը, էջ 227) ինքն էր որ առաջին անգամ Փոքր Հայքը Կապադովկիայէն անջատելով առանձին նահանգ ըրաւ, Մելետինէ մայրաքաղաքով, և աւելի ընդարձակ շրջանակ մը տուաւ քան այն որ երբեմն ունէր, երբ անկախ թագաւորութիւն էր։

Դիոկղետիանոսի կարգադրութեան մէջ նշանակելի է որ Փոքր Ասիան կը բաժնուի փոքր նահանգներու ուր աւելի ազգային միութիւնները անջատելու ձգտում մը կը տեսնուի։

Այսպէս, Կապադովկիա, Գաղատիա և Փռիւգիա կը բաժնուին երկուական մասերու Առաջին և Երկրորդ անուններով ինչպէս Փոքր Հայք կամ Հռոմէական Հայաստանը, որ Առաջին և Երկրորդ Հայք անուններով երկու նահանգներու կը վերածուի(1)։

Այնպէս որ հաւանական է մտածել թէ Դիոկղետիանոսի այս կարգադրութեան հետեւանօք է որ նախկին Փոքր Հայքի վրայ աւելցած են գոնէ մէկ մասը Կապադովկեան այն եօթն նահանգներուն որոնք Ստրաբոն Կապադովկիոյ և Պտղոմէոս աշխարհագիրը Փոքր Հայոց մաս կը համարէին (տես վերը)։

150 տարիներու կարճ ժամանակի մը մէջ կատարուած փոփոխութեան մը հետ կապ ունէր անշուշտ այս կարգադրութիւնը՝ որ եղած էր Ստրաբոնէն մօտաւորապէս երեք դար յետոյ։

Այդ փոփոխութիւնը ուրիշ բան չէր կրնար ըլլալ եթէ ոչ բնակչութեան ցեղային նկարագիրին փոփոխութիւնը և այս երկիրներուն խիտ Հայ բնակչութեամբ լեցուած ըլլալը, որ կ'ստիպէր այդ նահանգները նկատելու «Հայկական»:

Քիչ յետոյ Մեծն Կոստանդիանոս (306–337) որ բոլոր Հռոմէական պետութիւնը վարչական նոր բաժանումներով օժտեց, զայն բաժնելով նահանգներու, որոնք իրենց կարգին կ'ստորաբաժնուէին վիճակներու և վիճակները՝ գաւառներու (ըստ Ծանօթութիւն Կայսրութեան գիրքին), նոյնպէս կ'ընդարձակէ Փոքր Հայքի սահմանները։

(1) Միութիւններին եղծուած երկիրներու շարքին կարելի է դասել նաեւ Պոնտոսը որ երկուքի բաժնուած էր Հելենապոնտոս և Պոլեմոնեան Պոնտոս անուններով։ Սուրիա, Կիլիկիա և այլն ալ այս տեսակ բաժանումներ ունեցան։

*Այս նոր բաժանումներուն համաձայն* Արեւելեան Նահանգին *ենթա-կայ* Պոնտոսի վիճակին *մէջ կ'իյնար Փոքր Հայքը որ երկու գաւառի բաժնուած էր, իւրաքանչիւրը իր գլուխը ունենալով Պրետորներ։*

*Այս երկու գաւառները կը կոչուէին* 1. Արմենիա Առաջին *կամ* Առաջին Հայք, 2. Արմենիա Երկրորդ *կամ* Երկրորդ Հայք(1)։

*Այս երկու գաւառներէն* «Արմենիա Առաջին»*ին վարչական կեդրոնն էր Սեբաստիա, և այդ գաւառին մէջ կը գտնուէին նաեւ Սեբաստու-պոլիս, Նիկոպոլիս, Կողոնիա, Սատաղա, Ամփիպոլիս, Պերիսա, Հե-րակլեպոլիս կամ Պետաքտոլէ քաղաքները։*

*Յետոյ աւելի եւս ընդարձակուեցաւ այս գաւառը, և անոր կցը-ւեցաւ նաեւ Երիզա, Կամախ և Թէոդոսուպոլիս գաւառները։*

«Արմենիա Երկրորդ»*ին կեդրոնն էր Մելետինէ, և անոր սահմաննե-րուն մէջ կը գտնուէին նաեւ Արկա, Կոմանա Կապադովկիոյ, Արա-պիսոս, Կիթարիձոր։*

*Երբեմն նաեւ Սոփենէ (= Ծոփք) և Տրոպոնտիս կամ Տիոպոն-տիս (տես Անդրէաս վրդ. Ալեքսանդրեան,* Պատմութիւն Սեբաստիոյ, 1911, *Վեննետիկ, էջ* 15)։

*Ինչպէս կը տեսնուի, այս երկու գաւառները աւելի ընդարձակ տարածութիւն մը կ'ընդգրկէին, քան մինչեւ այն ատեն Փոքր Հայք անունով ճանչցուած երկիրը, որուն եթէ արեւելքէն Հայոց մասեր կցուած էին, սակայն արեւմուտքէն՝ Փոքր Ասիայէն ոչ նուազ ըն-դարձակ երկիրներ միացած էին։*

*Այլեւս Փոքր Հայք բացատրութիւնը դադրած էր գործածութենէ և բոլոր այդ երկիրները կը ներկայացնէին* Հայքը *կամ* Հայաստանը *որ այս երկու գաւառներուն մէջ կը պարփակուէր։*

*Իրենց կոչումն իսկ ցոյց կու տար այս երկու գաւառներուն մէջ Հայ բնակչութեան մեծամասնութիւն կազմելը։*

*Իսկ երբ Հայաստան երկուքի բաժնուեցաւ* (384*ին*) *Պարսիկ–Հռոմէ-ական համաձայնութեամբ, Թէոդոսս կայսրը ըրաւ նոր կարգադրու-թիւններ Արեւելքի մէջ և այս առթիւ* 378*էն* 386*ի ատենները Փոքր Հայքը կրկին բաժնեց երկու մասի* Ա. Հայք *և* Բ. Հայք *անուններով* (Güterbock. Römisch-Armenien S. 5 *և* 23, *Հիւպշման,* Հին տեղւոյ անուն-ները, *էջ* 76)։ *Անջատ* Հռոմէական Հայաստանէն *որ կը բաղկանար գլխա-ւորապէս Փոքր Հայքի դրացի Եկեղեաց գաւառէն, Դերջանէն, Խոր-ձեանէն, Կարինէն և Հին Հռոմէական սատրապութիւններէն, ինչպէս Ծոփքէն, Անգեղ Տունէն և. այլն։*

*Հռոմէական Հայաստանը նախապէս ունէր անուանական թագա-ւոր մը, որուն առաջինը և վերջինը եղաւ Արշակ Գ.* (379–386)։

«Յազկերտ, Հայաստանի մէջ թագաւոր անուանած ըլլալով իր եղբայրը, երկրին Հռոմէական բաժինը վերջնականապէս կցուեցաւ եւ կոմս մը վրան դրուեցաւ (415 – 416)» (E. W. Brooks. The Cambridge Medieval History. *Ա. հատ. էջ* 463)։

*Արդարև կը տեսնենք թէ «Հռոմէական Հայաստան»ը կառավար-ւած է բոլորովին առանձին, իշխանութեանը տակ* «Կոմս Հայաստանի» (Comes Armeniae) *տիտղոսով կուսակալի մը, որ կայսրը ինքն կ'ան-ւանէր։*

*Իսկ երբեմն Փոքր Հայք կոչուած երկիրն որ տարապայման ըն-դարձակուած էր և երկու գաւառներու բաժնուած,* Առաջին *և* Երկրորդ Հայք *անուններով, կը գտնուէին կայսրութեան ընդհանուր վարչա-կան կազմին մէջ։*

*Աշխարհագրական սահմաններու այս փոփոխութիւնը և երբեմն Կապադովկիա նկատուած ընդարձակ երկիրներու Փոքր Հայոց մասեր համարուիլը, չէր կրնար ուրիշ իրողութեան մը արդիւնքը ըլլալ, եթէ ոչ բնակչութեան մեծամասնութեան ցեղային դիմագծութեան հիմնական փոփոխութեանը։*

*Բնակչութեան մէջ Հայերու մեծամասնութիւն դարձած ըլլալն էր որ ապահովաբար այդ նահանգները, որոնք երբեմն Կապադովկիա կը նկատուէին, Հայաստանի մաս համարել տուին և. որովհետև Մեծ Հայքէն բաւական հեռու էին, սահմանակից* Փոքր Հայքի *մասերը նկատուեցան։*

*Եթէ արդարև այս էր պատճառը* Հայք *անունով երկիրի մը մասեր համարուելուն այս տարածութիւնները, շատ որոշ է թէ այս պարա-գային պէտք է ընդունինք թէ Հայ ցեղը դէպի արեւմուտք իր բնա-կութեան սահմանները չափազանց ընդարձակած էր և Հռոմէական Ասիոյ մանաւորապէս Հայաստանի սահմանամերձ Կապադովկեան գաւառները լեցուած էին Հայերով կամ մէկ բառով հայացած էին։*

*Դէպի Արեւմուտք այս տարածումը Հայ ցեղին, և մանաւորապէս անոր այնքան մեծ թուով տեղաւորուիլը Կապադովկիոյ մէջ, անոր մէկ կարեւոր մասը Հայաստանի վերածել կամ նկատել տալու պատ-ճառն, ինքնին փաստ մըն էր թէ միւս մասերուն մէջ ալ, մանաւորա-պէս Արեւմտեան Կապադովկիոյ մէջ ալ — ուր էր Կեսարիա — եթէ ոչ նոյնքան ստուար թուով սակայն բաւական կարեւոր քանակով մը Հայեր անպատճառ կային։*

Բ.

## ՀԱՅՈՑ ԳԱՂԹԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

*Այս երեւոյթը առանց պատճառի չէր։ Հայաստան իբր Պարթեւ-Հռոմէական մրցութեան առարկայ այս երկու հզօր պետութեանց բա-խումին վայրը դարձած էր և պատերազմներու հանդիսավայր։*

*Երկու հզօր պետութիւնները յաջորդաբար շարունակ կը կոխո-տէին և կը ջանային իրենց ազդեցութեան տակ պահել Հայաստանը հոն թագաւորեցնել ջանալով իրենց հաւատարիմ մէկը։*

*Հետեւաբար Հայաստան երկար տարիներ մշտատեւ պատերազմի մը բոլոր տխուր հետեւանքներուն ենթարկուեցաւ։*

(1) *Մաղաղ Ասորի Անտիոքացի (Գիրք ԺԲ.) կը պատմէ թէ Դաղե-րիոս կայսրը* (305–313) *որ Հայաստան արշաւած է, գրաւած է անոր մէկ մասը և իբր թէ զայն երկու մասի բաժնած՝* Առաջին *և* Երկրորդ Հայք *անուններով (Չամիչեան Բ. էջ* 524)։

*Շփոթութիւն մը պէտք է ըլլայ աս։ Հաւանօրէն Կոստանդիանոսի ատեն կատարուած բաժանումն է որ Ասորի պատմագիրը Դագերիոսի կը վերագրէ։* J. Laurent, (L'Arménie entre Byzance et l'Islam, *էջ* 301) *բոլորովին լռութեամբ կ'անցնի թէ՛ Կոստանդիանոսի և թէ՛ Դաղե-րիոսի բաժանումներուն վրայէն և Թէոդոսի կը վերագրէ Փոքր Հայոց երկուքի բաժանումը* Ա. *և* Բ. Հայք *անուններով։*

Մանաւանդ Տիբերիոսի կողմէ Կապադովկիոյ ուղղակի Հռոմի կցուելէն (17) և Հայաստանի վրայ Գերմանիկոսի կատարած արշաւանքէն յետոյ, ազդեցութեան բուռն պայքար մը սկսաւ դրացի երկու մեծ պետութեանց միջեւ Հայաստանի շուրջ։

Եւ ինչպէս ճակատագրական է բոլոր տկար ժողովուրդներու համար, Հայերը չեն կրցած նախընտրութիւն մը ընել այս երկու ուժերուն միջեւ և երբեմն մէկ կողմին և երբեմն միւս կողմին յարած են, և երբեմն ալ երկուքի բաժնուած են։

Ասոր համար է անշուշտ որ Տակիտոս Հայերը կը ներկայացնէ «հնուց ի վեր մարդկանց բնաւորութեամբ եւ աշխարհին դիրքով երկմիտ ժողովուրդ մը» (Տակ. 2. 56)։

Հայոց համակրութիւնը նախապէս դէպի Պարթեւները աւելի զօրաւոր ըլլալ կը թուի, վասնզի թէեւ արքունիքին մէջ և մէկ քանի թագաւորանիստ քաղաքներու մէջ հելլէնական թեթեւ մակերեւութային մշակութիւն մը տեղ գտած էր, սակայն ժողովուրդը իր ամենամեծ զանգուածով կը միար արեւելեան ժողովուրդ՝ արեւելեան սովորութիւններով, բարքերով, աւանդութիւններով, դաստիարակութեամբ, մտաւորութեամբ, ընկերական սարքուածով, նոյնիսկ որսի և այլ զբօսանքներով, Արեւելեան ազգաց խմբին հետ կապուած և համակիր (Տես Գ. Ֆնտգլեան, Ուսումնասիրութիւններ Կորիւնի շուրջ. ԱՆԱՀԻՏ, 1929, թիւ 1, էջ 114)։

Այս պատճառով է որ Հռոմ երբեմն ստիպուած է խստագոյն միջոցներու դիմել Հայերը պատժելու համար և իր լէգէոնները մտցնել Հայաստան և ջնջել նոյնիսկ ի պատիժ Հայոց անկախութիւնը և Հռոմէական նահանգ հռչակել Հայաստանը, ինչպէս ըրաւ 114ին Տրայիանոս կայսրը (98-117), Արմէնիա անուն նահանգի մը վերածելով երկիրը, որուն առաջին և վերջին Օգոստեան տեղակալը փոխանակ Պրետորի (legatus Augusti propraetore) դրուեցաւ բարձրաստիճան անձ մը, Գ. Ատիլիոս Ցուլիանոս Կղաւդիոս Ռուփինոս անուն (Տոքթ. Հ. Յ. Ասատուրեան, Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի եւ Հռոմայ. 190էն Ն. Ք. մինչեւ 428 յ. Ք., Վենետիկ, 1912, էջ 204–205)։

Ասսիրիա (= Ատիաբենէ) և Մեզոպոտամիա (= Միջագետք) նոր կազմուած նահանգներուն հետ, Արմէնիաի կազմութիւնը Հռոմի Ասիոյ մէջ դէպի արեւելք նոր քայլեր առնելուն նշանն էին, սակայն քիչ յետոյ ամէն կողմ Հռոմէական պահապան գունդերը ջարդուեցան կամ վանուեցան։

Ապստամբութեան գլխաւոր բոյներն էին Միջագետք և Հայաստան։

Հայաստան միայն մէկ տարի Հռոմէական նահանգ եղաւ և ապստամբութիւնը տակաւին զսպուած չէր երբ Տրայիանոս կայսրը մեռաւ և իր յաջորդը՝ Ադրիանոս (117-138), անոր ծրագիրը անգործադրելի համարելով, Հայոց թոյլ տուաւ որ թագաւոր ունենան, մինչ Տրայեանու ժամանակ տեղակալ ունեցած էին, ըստ Հռոմէացի տարեգրի մը վկայութեան (տես Ասատուրեան, էջ 211)։

Ուրեմն Ադրիանոս աւելի բանաւոր համարեց իր նախորդին գրաւած աշխարհներէն հրաժարիլ, և «Եփրատէն եւ Տիգրիսէն անդին երկիրները թողուց, ինչպէս կ'ըսէր, Կատոնի օրինակին հետեւելով, որ մակեդոնացիները ազատ հռչակեց որովհետեւ պահել կարելի չէր» ինչպէս ըսած է Հռոմէացի պատմագիր մը, կամ «Ադրիանոս լաւ համարեց Տրայեանու ձեռքով առնուած



նահանգները թողուլ քան թէ բանակով պահել» ինչպէս կ'ըսէր ուրիշ պատմագիր մը (Ասատուրեան, նոյն էջ, 212)։

Հայոց թագաւորութիւնը այսպէս վերակազմուեցաւ սակայն Հայաստանը Հռոմի հովանիին տակ ունենալու և հոն Հռոմի հաւատարիմ անձեր թագաւոր դնելու փափաքը միշտ և տեւեց, և այս նպատակին հասնելու համար միշտ փորձեր կատարուեցան Հռոմէական կայսրութեան կողմէ, աւելի կամ նուազ յաջողութեամբ, վասնզի Հայերը Պարթեւներուն աւելի համակիր էին։

Սակայն 226էն յետոյ նժարը դարձաւ նպաստաւոր Հռոմի, երբ Պարթեւ-Արշակունիներու գահը յափշտակուեցաւ Արտաշիր Սասանեանէն, և Հայք և իրենց Արշակունի արքունիքը դէմ դարձան Պարսից։ Հազիւ դար մը յետոյ դէպի Պարսիկները՝ Հայոց ատելութիւնը աւելի շեշտուեցաւ, վասնզի Քրիստոնէութիւնը որ Հայաստան մտաւ, ծանրակշիռ հետեւանքներ ունեցաւ։

Կրօնքի այս փոփոխութեամբ, Հայերը անջատուեցան արեւելեան ազգերու խումբէն, թիկունք դարձուցին անոր, և իրենց մտաւոր սնունդին՝ դաստիարակութեան, բարքերուն, իտէալին համար դարձուցին իրենց հայեացքը դէպի Արեւմուտք, աւելի բացայայտ՝ սահմանակից Յունաց աշխարհը՝ այսինքն դարաւոր ոսոխին Պարսից և Պարթեւաց (տես Գ. Ֆնտգլեան, ԱՆԱՀԻՏ, 1929, թիւ 1, էջ 114)։

Սակայն մինչեւ Հռոմի պաշտօնապէս քրիստոնեայ դառնալը Քրիստոնէութիւնը պատճառ եղաւ որ Հռոմ հալածէ Հայերը(1) որոնք «ի սկզբանէ անտի բարեկամք եւ մարտակիցք էին Հռոմոց» ըստ Եւսեբիոս Կեսարացիին։

Այսպէս Մաքսիմինոս Դաղերիոս Դաժ (303–313), որ Արեւելքի կայսրութիւնը ստացած էր, 311ին, Հայոց դէմ պատերազմի գնաց, չշատանալով միայն իր երկրին մէջ կատարած հալածանքներով։ Պատերազմի շարժառիթը սա էր որ Հայերը «քրիստոնեայք էին եւ զերկրպագութիւն Աստուծոյ փութապէս պնդութեամբ կատարէին» (Նոյն)։

Սակայն չկրցաւ իր նպատակին հասնիլ, վասնզի Մաքսիմինոս «հանդերձ զօրօք իւրովք ի պատերազմի անդ ընդդէմ Հայոց 'ի բազում ուրեք հարեալ վատթարէր առաջի նոցա» (Նոյն)։

Բայց երբ Կոստանդիանոսի միահեծան ինքնակալութենէն յետոյ Քրիստոնէութիւնը պաշտօնական կրօնքը եղաւ Հռոմէական կայսրութեան (տես վերը, էջ 254) Հռոմի և Հայաստանի միջեւ կրօնական շարժառիթներով ատելութիւնը վերցաւ և սակայն այս անգամ ալ պարսիկները սկսան կրօնական պատճառներով հակառակիլ Հայոց և երբեմն նոյնիսկ կրօնական հալածանքներ գործադրել։

Շատերը ազատելու համար կրօնական պատճառներով իրենց ենթարկուած դժբախտութիւններէն, գաղթեցին Հռոմէական երկիրներ։

Զօրաւոր հակումը դէպի արեւմուտք և խորշումն Պարսիկներէ յառաջ կու գային գլխաւորապէս երկու պատճառներէ, որոնք Արքունիքի և Եկեղեցւոյ հետ կապ ունէին։ Առաջինն էր Արշակունեանց

---

(1) Ինչպէս Մաքսիմիանոսի (238) և Դեկոսի (249–251) ատեն Հայաստանի մէջ հալածանք գործադրուած է, ինչպէս հաստատած է Փիրմիլիանոս Կեսարիոյ եպիսկոպոսը, ըստ վկայութեան մեր Մովսէս Խորենացիին (Պատմ. Հայոց, Բ. 75)։

բարձումը Պարսկաստանի մէջ և Հայոց թագաւորներուն բնական ատելութիւնը յափշտակիչներուն դէմ, երկրորդ և կարեւորագոյնը՝ ազդեցիկ կղերականութեան մը կազմուիլը, որ սերտ կապերով միացած էր Արեւմուտքի հետ։

Քրիստոնէական կրօնքի ազդեցութեան տակ, ըստ ազգային աւանդութեան, առաջին քրիստոնեայ Հայ թագաւորը դաշինք մը կընքեց առաջին քրիստոնեայ կայսեր՝ Կոստանդիանոսի հետ, ըստ ամենայն հաւանականութեան 324ին (տես Աստուրեան, էջ 266–269) երբ Կոստանդին Լիկինոսի վրայ տարած յաղթութեամբ բովանդակ Արեւելքի և Արեւմուտքի միակ տէր դարձաւ։

Այս դաշինքով Հռոմ յանձն կ'առնէր «օգնական եւ թիկունք լինել աշխարհին Հայոց» (Փաւստոս Բիւզանդացի, տպ. 1884, էջ 78) կամ պաշտպանել Հայաստանը ընդդէմ Պարսից և Հայաստան կը խոստանար իբր ճորտ հաւատարիմ մնալ Հռոմի։

Ուրեմն եթէ ճիշդ է որ «զուխտն . . . զդաշանցն կռելոց զերդմանցն հաստատութեան, միջնորդութեամբ 'ի մէջ կայսերն Կոստանդիանոսի եւ 'ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր» (Փաւստոս Բիւզանդացի, էջ 78), այն ատեն քրիստոնեայ Հայաստան առաջին իսկ առթիւ դէպի Արեւմուտք հակում ցոյց կու տար, և թշնամական դիրք կը բռնէր հանդէպ Արեւելեան իր հզօր դրացիին որ անտարբեր հանդիսատես չէր կրնար ըլլալ Հայոց ընդգրկած այս նոր ուղղութեան, վասնզի Հայք՝ միանալով Հռոմէական սահմանակից նահանգներուն Հայ բնակչութեան, վտանգաւոր ոյժ մը կրնային կազմել, Պարսիկ պետութեան համար, որուն դիրքը վտանգուած կրնար համարուիլ եթէ Հայաստան օտար ազդեցութեան և մանաւանդ Հռոմէականին պէս հզօր պետութեան մը գերիշխանութեան ենթարկուած ըլլար։

Ասոր համար է որ Պարսկաստան իր կարգին ամէն ջանք թափած է Հայաստանը նուաճելու զէնքով, քաղաքականապէս և կրօնապէս ընդդէմ Հռոմի որ նոյն նուաճումները կատարել կը փորձէր, նոյնքան եռանդով։

Եւ այսպէս երկարատեւ պայքարի մը հանդիսավայր եղած է Հայաստան, ուր ստեղծուած են երկու կուսակցութիւններ, երկու պետութիւններու վարձկաններէն կամ ազգային շահու՝ իրենց ըմբռնումներով՝ անոնցմէ մէկուն յարիլ նպաստաւոր նկատողներէ՝ բաղկացեալ։

Այնպէս որ ամէն անգամ որ Պարթեւները և Պարսիկները յաջողէին Հայաստանը իրենց տիրապետութեան ենթարկել, Հռոմի կուսակիցները և նոյնիսկ պատերազմի աղէտներուն ենթարկուած խաղաղ բնակիչներէն մէկ մասը երբեմն իրենց կամքով և երբեմն ակամայ կ'ստիպուէին անցնիլ Հռոմէական երկիրներ և հոն կը փնտռէին այն հանգիստը ու անդորրութիւնը որ իրենց երկիրը կը զլանար տալ իրենց։ Երբեմն նոյնիսկ Պարսիկ ճնշումին տակ Հռոմ կը լքէր Հայերը և կը քաշուէր մինչև Եփրատ, իր հետ տանելով իր կուսակից կամ համակիր Հայերու բազմութիւն մը, որոնք կը հաստատուէին մերձակայ Հռոմէական երկիրներ։

Ասիկա շատ բնական էր, երբ մանաւանդ մտաբերենք որ Հռոմ շարունակ մեր երկրին ներքին գործերուն կը միջամտէր և հոն իրեն կուսակիցներ և թշնամիններ ունէր։



Ամէն անգամ որ իր կուսակիցները նեղ դրութեան կը մատնուէին անշուշտ Հռոմի տիրակալութեան ենթարկուած երկիրները կ'ապաստանէին, ինչպէս նաև ամէն անգամ որ Հռոմէական լեգէոններ Հայաստան կը մտնէին, կը պատժէին իրենց հակառակորդները կամ վանելով կամ բռնի տեղափոխելով իրենց երկիրները։

Այսպէս Հռոմի տիրապետութեան ենթարկուած Փոքր Հայքը և անոր անմիջական դրացին, Կապադովկիան — մանաւանդ անոր արեւելեան մասերը — կը լեցուէին Հայերով և անոնց թիւը այնքան կ'ստուարանար որ այդ երկիրներն ալ կ'ստանային հայկական դրոշմ և Հայ անուն, կոչուելով, Առաջին Հայք և Երկրորդ Հայք,

Այնպէս որ Եփրատամերձ երկիրներու մէջ բնակչութեան հետզհետէ չեշտուած հայկական նկարագիրը պէտք չէ զարմանք պատճառէ։

Մանաւանդ երբ պատմական տուեալներ ունինք թէ Հայերով լի էր ո՛չ միայն Եփրատէն Ալիս տարածուող երկիրը, այլ աւելի արեւմուտք Ալիսէն մինչև Բիւզանդիոն՝ Փոքր Ասիոյ մէջ աւելի կամ նուազ թուով Հայեր՝ գոյութիւն ունէին ամենահին ժամանակներէ սկսեալ։

Թերեւս նոյնիսկ Բիւզանդիոն որ իր հիմնարկութենէն անմիջապէս յետոյ կեդրոնավայր մը եղած է Անատոլեան բնակչութեան, իր զարգացման առաջին շրջաններուն, Հայ ծագումով բնակիչներ ունեցած էր, քանի որ Կ. Պոլսոյ բնակչութեան աղբիւրը եղող Փոքր Ասիոյ հետ Հայոց առնչութիւնները անյիշատակ հնութիւն մը ունէին։

Սակայն այսօր կարելի չէ Ալիսէն դէպի արեւմուտք տարածուող երկիրներու Հայ բնակիչներուն վրայ խօսիլ աւելի որոշ և պատմական վաւերագիրներով, վասնզի քրիստոնէութիւնը անոնց մէջ ազգային նկարագիրը ջնջած և զանոնք հայութենէն դուրս կորզած է այնպիսի ժամանակամիջոցի մը մէջ՝ երբ տակաւին հայերէն գիր ու դպրութիւն չի կար։

Սակայն Հայ արիւնը՝ անուրանալի կերպով խառնուած է տեղացիներուն։

Այս կարգին, Եփրատէն արեւմուտք ամէնէն մերձաւոր երկիրը Փոքր Հայքի դրացի Կապադովկիան էր, որուն հարաւային կողմը և Արգէոսի շուրջ բոլոր երկիրներու մէջ եւս պէտք էր գէթ Հայ փոքրամասնութիւն մը գոյութիւն ունենար, իբր արդիւնք Հայ ցեղին դէպի արեւմուտք շարժման, որ օրէ օր աւելի պիտի չեշտուէր, մանաւանդ երբ Հռոմ հետզհետէ իր կատարած յառաջխաղացութիւններով վերջապէս պիտի յաջողէր Դ. դարուն վերջերը, գրաւել բուն Հայաստանի հողին մէկ մասը և հոն երկար ատեն մնալ իբր տիրող։

Քաղաքական տիրապետութեան առաջին և անմիջական արդիւնքը անշուշտ ան պիտի ըլլար որ երթեւեկ պիտի ստեղծուէր երկու երկիրներուն մէջ և երկու աշխարհները իրարու հետ պիտի յարաբերէին փոխադարձաբար և չփում պիտի ունենային։

Հայերը դէպի Արեւմուտք՝ Եփրատէն անդին ստուարացած էին մինչեւ Հռոմէական տիրապետութեան ենթարկուիլը Հայաստանի մէկ մասին, այն վաղանցիկ տիրապետութիւններու կամ զինուորական արշաւանքներու շրջանին, որ Հռոմի զօրավարները կատարած են դէպի Հայաստան Պարսիկները անկէ վանելու համար։

Պատմութիւնը առանց մանրամասնութիւններու կը հաստատէ թէ բազմաթիւ արքայազուններ Հռոմէական դաստիարակութիւն ունէին,

և Հռոմէն կամ անոր երկիրներէն կու գային, վասնզի վաղուց Հռոմէական երկիրներ ապաստանած էին Պարսից յարձակումներուն պատճառով։

Պատմութիւնը կը յիշատակէ նաեւ թէ Հայոց Խոսրով Բ. թագաւորը (311-328) որ հաւատարիմ էր Հռոմի, երբ Շապուհ Բ. (310-376) կը մտնէ Հայաստան, կ'ստիպուի իր կուսակիցներով Հռոմէական երկիր փախչիլ։

Իսկ 339ին երբ Կոստանդիոս կը մտնէ Հայաստան և կը նուաճէ պարսկական կուսակցութիւնը, անոր գլխաւորները որոնք պատճառ եղած էին Խոսրով թագաւորին փախուստին, փոխանակ խստիւ պատժելու, Հռոմէական երկիրներ կը փոխադրէ (Աստուրեան, էջ 274)։

Արշակ Բ.ի ձերբակալութենէն մինչեւ Պապի գահակալութիւնը՝ Հռոմի լեգէոններուն ուժովը՝ պատահած շփոթութեանց ընթացքին նախարարներէն մաս մը ընտանիքնին հաւաքելով Հռոմէական երկիրներ անցան, վասնզի Շապուհ Հայաստանի մէջ կրօնական սաստիկ հալածանք գործադրեց։

384ին երբ Հայաստան Հռոմի և Տիզբոնի կարգադրութեամբ երկուքի բաժնուեցաւ դէպի արեւմուտք Հայոց շարժումը աւելի շեշտուեցաւ և Հռոմէական տիրապետութեան շրջանին Փոքր Հայք և դրացի դէպի արեւմուտք գտնուող Հռոմէական երկիրներու Հայերու թիւը անհամեմատ աւելի բազմացաւ։

Առանց անոր անմեկնելի պիտի մնար Փոքր Հայքի դրացի երկիրներուն Հայ բնակչութեան մեծապէս բազմանալը, այնքան որ Հռոմէական պետութիւնը, —ինչպէս բացատրուեցաւ— ստիպուէր երբեմն պզտիկ Փոքր Հայքը ընդարձակել և անոր կցել Կապադովկիոյ այն մասերը որոնք անշուշտ կը պարունակէին խիտ հայաբնակութիւն մը, հետեւանք Հայաստանի քաղաքական անհաստատ կացութեան և Հռոմէական խարտաւանանքներուն որոնք կը գործուէին մեր երկրին մէջ։

## Գ.

## ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ԿՐՕՆԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՐԳԱՍԻՔՆԵՐԸ

Հռոմի տիրապետութիւնը Հայաստանի վրայ, մտաւորական և գեղարուեստական մարզերու մէջ ալ առանց հետեւանքի չմնաց։

Յատկանշական իրողութիւն մըն է որ Հռոմ իր տիրապետութիւնը յաւերժացնել ուզած է բոլոր այն երկիրներու մէջ ուր իր լեգէոնները տիրած ու բանակած են, կառուցանելով հսկայական ու հոյակապ շինութիւններ։

Ներոն՝ Տրդատ թագաւորին հետ Հայաստան ղրկեց ճարտարապետներու և արհեստաւորներու բազմութիւն մը ահագին դրամով, վերակառուցանելու համար Հայոց թագաւորութեան կործանած մայրաքաղաքը Արտաշատ, անշուշտ Հռոմէական արուեստով և ճաշակով (Աստուրեան, Հայաստան եւ Հռոմ, էջ 188)։

Հետեւաբար Հայաստանի մէջ Հռոմէական արուեստը ըրաւ նուա-



ճումներ և Հայաստան եւս ստացաւ ճաշակը Հռոմէական արուեստին, ճարտարապետութեան, պերճանքին, ինչպէս նաեւ ապականութեանց, որոնք Հայաստան կը ներմուծուէին նաև Հռոմէական բանակներուն հետ որոնք մնայուն կերպով կը մնային Հայաստանի մայրաքաղաքին մէջ պաշտպանելու համար Հռոմէն կարգուած թագաւորները։

Հռոմի և Հայաստանի քաղաքական յարաբերութիւնները, Հռոմի բանակներուն Հայաստան բնակութիւնը, Հայ թագաւորներու Հռոմի կայսերական արքունիքին հետ ունեցած յարաբերութիւնները, և հուսկ ուրեմն Հայաստանի նախ պարբերաբար և ի վերջոյ գէթ մասամբ Հռոմի տիրապետութեան ենթարկուիլը, պատճառներ էին որ Լատին լեզուն իբր պաշտօնական յարաբերութեանց լեզուն տարածուէր Հայաստանի և Լատինական լեզուի և Հռոմէական գրականութեան ծանօթութիւնը՝ Հայոց մէջ։

Անկասկած է գոնէ, որ Հայ պատանիներ· իրենց ուսումը կատարելագործելու նպատակով Հռոմ կ'երթային —ինչպէս առաջ Աթէնք— որչափ ատեն որ Հռոմէական կայսրութեան ծանրութեան կեդրոնը «յաւիտենական» քաղաքն էր։

Սակայն երբ Հռոմէական պետութեան կեդրոնը Արեւելք փոխադրուեցաւ, և Դիոկղետիանոս (285 – 303) իր բնակավայրը Նիկոմիդիա փոխադրեց, Արեւելքի շատ մը քաղաքներուն մէջ ալ բացուեցան ուսումնարաններ, որոնց առաջինը կրնայ համարուիլ Նիկոմիդիոյ ուսումնարանը որ նոյնիսկ Դիոկղետիանոս ինքն հիմնեց։

Արեւելքի այս շարժումը շատ աւելի մեծ էր քան Արեւմուտքի մէջ տեսնուածը։

Բացի Կ. Պոլսոյ համալսարանէն որ 425ին միայն պիտի հաստատուէր Թէոդոս Բ.ի (408-450) ժամանակ, բարձրագոյն դպրոցներ ունէին Աթէնք, Աղեքսանդրիա, Անտիոք, Պէյրութ, Եդեսիա և Կեսարիա (տես Բրոֆ. Ն. Արտոնց, Հայոց դերը Բիւզանդական գիտութեանց մէջ, ՀԱՅՐԵՆԻՔ ամսաթերթ, Բ. տարի, թ. 2 – 3)։

Այս դպրոցները մասնաւորապէս Դ. դարուն եռանդուն և փայլուն գործունէութիւն մը ունեցած են։

Անշուշտ այս շրջանին բազմաթիւ Հայ պատանիներ և երիտասարդներ Հռոմէական պետութեան ուսումնական կեդրոնները եղող այդ քաղաքները դիմած են ուսում ստանալու համար։

Մասնաւորապէս քրիստոնէութեան Հայաստանի մէջ հաստատուելէն յետոյ այդ մտաւորական յարաբերութիւնները աւելի սերտացան անշուշտ, և հաւանօրէն շատ Հայեր Հռոմէական ուսման մեծ յարգ ընծայեցին և անոր հետեւեցան։

Ասոնցմէ կը յիշատակուի իր բացառիկ կարողութեան համար Պրոյերիսիոս (Proisérios) կամ Հայ անունով Պարոյր, այնքան համբաւուած և շնորհիւ իր մեծ հանճարին տիեզերական անմահ հռչակի տիրացած Հայ հռետորը, որուն համար Հռոմայեցի գրող մը՝ Լիբանիոս կը վկայէ թէ անիկա իր պերճախօսութեամբը աշխարհը գրաւած, համբաւով՝ արձաններու արժանի հանդիսացած և վարքով՝ ազնիւ անձ մը եղած էր։

Եւնաբիոս յոյն ժամանակակից հեղինակը կ'աւանդէ թէ անիկա նախ Անտիոքի մէջ Ուլպիանոսի աշակերտած է և յետոյ անցած է Աթէնք, ուր աշակերտած է Յուլիանոս Կապադովկեցիին, որ մեծ

վստահութիւն և համարում ունէր իր աշակերտին վրայ։ Յուլիանոսի հեռանալէն յետոյ անոր դասախօսի աթոռի համար որոշուած վեց անձերէն մէկն ալ Պարոյր եղած էր իր մտերիմին Հեփեստիոնի հետ։ Սակայն աշակերտները կուսակցութեան բաժնուեցան և զանազան երկիրներ այս վեց դասախօսներուն սեփական աշակերտներ տուին։ Բոլոր պոնտացիք և մերձակայ գաւառները— անշուշտ Հայաստանն ալ մէջն ըլլալով— աշակերտներ կը ղրկէին Պարոյրին իբր ծանօթի և իրենց մէջ համբաւ ունեցող հռչակաւոր մարդու։ Ասկէ զատ բոլոր Փոքր Ասիայէն, Եգիպտոսէն և Լիբիայէն իր հանճարին վրայ զմայլողներ գունտագունտ կը դիմէին Պարոյրին որուն փառքը ամէն կողմ կը տարածուէր։

Նախանձորդներ զինքն Աթէնքէն աքսորեցին երկու անգամ։

Կոստանդ կայսրը զինքը Ֆրանսա հրաւիրեց և անկէ մեծ պատւով Հռոմ ղրկեց, ուր խօսեցաւ հոյակապ ներբողեայ մը Հռոմ քաղաքին վրայ և զարմանքի մատնեց հռոմայեցիները, որո՛նք կանգնեցին պղնձէ ամբողջ անդրի մը սա արձանագրութեամբ. Regina rerum Roma, Regi Eloquentiae (Թագուհին Հռոմ Թագաւորին Բանին)։ Յետոյ Աթէնքի մէջ ճարտասանութեան աթոռը նստաւ մինչեւ Յուլիանոս Ուրացողի (361–363) գահակալութիւնը, երբ հրաժարեցաւ և հինգ տարի մասնաւորներու դասախօսելէ յետոյ մեռաւ 95 տարեկան։ Իրեն աշակերտած են Ս. Բարսեղ և Ս. Գրիգոր Նազիանզացի Աստուածաբան։

Պարոյրի յիշատակը մեզի կը հասնի այսպէս դիպուածով շնորհիւ իր բացառիկ կարողութեան։

Սակայն ինքն միակը չէր և շատեր կային իրեն պէս որ մինչեւ հեռաւոր Հռոմ, Աթէնք և Աղեքսանդրիա դիմած էին ուսում առնելու համար։

Գրիգոր Նազիանզացի և Ս. Բարսեղ կը յիշատակեն թէ իրենց դասընկեր ունեցած են Աթէնքի մէջ Պրոյերեսիոսի (= Պարոյր) աշակերտած ատեն, Հայեր որոնց անունները դժբախտաբար անծանօթ կը մնան։

Անոնցմէ ոմանք կը ճանչնային Բարսեղը, մէկ քանիներ Կեսարիոյ մէջ իր աշակերտակիցներն եղած էին. ամէնէն տարիքոտները իր հօրը դասերուն հետեւած էին։ Բայց այս յիշատակները փոխանակ անոնց մէջ համակրանք մը ստեղծելու անոր հանդէպ, ընդհակառակը անոնց նախանձը կ՚աւելցնէին։

Ամէն ատեն Հայ և Կապադովկիացի աշակերտներուն միջեւ խուլ հակառակութիւն մը կար։ «Հայ ուսանողները, պարզ և անկեղծ չեն» կ՚ըսէ Գրիգոր Նազիանզացի (տես ԼՈՅՍ, 1905, էջ 705)։

Պարոյրէն քիչ յետոյ ծաղկող հեթանոս յոյն հռետոր մը՝ Լիբանիոս իր նամակներուն մէջ կը յիշէ իր Հայ աշակերտներուն առատութիւնը (տես Աստուրեան, Հայաստան եւ Հռոմ, էջ 299)։

Ուրեմն ամէն տարակոյսէ դուրս է թէ Հայերը մինչև այդ հեռաւոր տեղերը կը դիմէին ուսման համար։

Եւ երբ այդքան հեռուները կ՚երթային չէին կրնար անտեսել մերձաւոր Կեսարիան։

Եւ արդարեւ ինչպէս Նազիանզացի կը վկայէ Ս. Բարսեղի հօրը դասերուն հետեւած էին, և իրեն աշակերտակից եղած էին Հայ ուսանողներ, որոնք յետոյ Աթէնք ալ գացած էին։



Կեսարիոյ ընծայուած այս կարեւորութեան մէջ անշուշտ մեծ դեր կատարած է երկրին իր Լուսաւորիչը անկէ ստացած ըլլալը։

Պէտք է հոս խոստովանինք որ եթէ ճիշդ ըլլայ նոյնիսկ Գրիգոր Լուսաւորիչի Հայ ծագումը որ աւանդութիւնը անոր կ՚ընծայէ, անիկա Կապադովկիոյ Եկեղեցւոյն մէկ առաքեալը ըլլալէ չի դադրիր, քանի որ անիկա իբր թէ բոլորովին անչափահաս Կեսարիա տարուած էր և հոն դաստիարակուած՝ իբր քրիստոնեայ և ոչ իբր Հայ, և իբր քրիստոնէութեան տարածիչ կու գար իր Եկեղեցւոյն՝ Կապադովկեան աթոռին կողմէ, Հայաստան, և կը յաջողէր իր առաքելութեան մէջ։

Սակայն իր լուսաւորութեան գործը լրիւ գլուխ հանելու և Հայոց աշխարհին ամէն կողմերը տարածելու համար քրիստոնէութիւնը՝ — ինչ որ մեծ պահանջի կարօտ գործ մըն էր — ի սկզբան Գր. Լուսաւորիչ պարտաւորուեցաւ թուով շատ Ասորի և Յոյն քահանաներ պաշտօնի կոչելու։

Անշուշտ Յոյն քահանաները՝ որոնք պաշտօնի կոչուեցան, առհասարակ Կեսարիոյ աթոռին մէջ պատրաստուած էին։

Ասոնց շարքին Կեսարիայէն եկան հանդիսաւորապէս Ս. Գրիգորի Կեսարիա ծնած երկու որդիները՝ Վրթանէս և Արիստակէս, որոնց առաջինը ամուսնաւոր էր՝ իսկ երկրորդը (կրտսերը) կրօնաւորական կեանքի նուիրած էր ինքզինքը, Կապադովկիոյ մէջ աշակերտելով Նիկոմաքոս անուն ճգնաւորի մը։

Հայերը այսպէս Կեսարիոյ աթոռէն ղրկուած քարոզիչներով լուսաւորուելէ յետոյ, այսինքն Դ. դարէն սկսեալ, սերտիւ կապուեցան այդ աթոռին, որուն հետ իրենց յարաբերութիւնները անընդհատ պահպանեցին։

Կապադովկիա այս տեսակէտով Հայոց համար կը ներկայացնէր ուշադրութեան առարկայ աշխարհամաս մը, որուն հետ կրօնական ազդեցիկ աւանդութիւններով կապուած էին։ Հետեւաբար շատ հաւանական է որ շատ մը Հայեր կրօնական շարժառիթներով հոն այդ շրջանակները տեղափոխուած ըլլան, մանաւանդ երբ նկատի ունենանք սա պարագան որ Կեսարիոյ եկեղեցին իր ազդեցութիւնը և հեղինակութիւնը պահելու համար Հայաստանի վրայ ճիգեր ըրած է, իրեն թև և թիկունք ունենալով նոյնիսկ քաղաքական իշխանութիւնը։

Պէտք չէ ուրանալ կամ անգիտանալ ձեւացնել թէ Կապադովկեան Եկեղեցին երկար ատեն Հայաստանը իրեն վիճակ ու թեմ նկատած է։

325ի Նիկիոյ տիեզերական ժողովին որոշումներուն տակ Կապադովկեան Եկեղեցւոյն պետը, երբ «Կեսարիոյ, Կապադովկիոյ, Գաղատիոյ եւ Հայոց աշխարհի Փոքուն եւ Մեծին» տիտղոսով կ՚ստորագրէր, ասիկա պարզ սնապարծութեան մը հետեւանքը չէր այլ իրական իշխանութեան մը որ Կապադովկեան Եկեղեցին ունէր Հայաստանի վրայ, որուն եպիսկոպոսապետները մինչև Սահակ յաճախ իրենց ձեռնադրութիւնը ստացան Կեսարիոյ աթոռէն, որքան որ ալ ինքնագլուխ (օրուէժալ) եկեղեցի մը կազմած ըլլային։ Նոյնիսկ նշանակելի է որ աւանդութիւնը Արիստակէսը ընկերակցութեամբ Տիգրոնի՝ Յովհաննէս, Մծբնայ Յակոբ և Եդեսիոյ Եւթաղ հայրապետներուն, կը տանի Կեսարիա, ուր միանալով Ղեւոնդիոսի, կը մեկնին Նիկիա մասնակցելու համար տիեզերական ժողովին (325)։

Ցոյն Օրթոտոքս եկեղեցիին համար անշեղ սկզբունք է որ ո՛ և է անկախ կամ ինքնավար պետութեան մէջ Եկեղեցին նաև իր առանձին կազմը կ'ունենայ։

Հայաստան քանի որ անկախ պետութիւն էր, պէտք էր որ իր ինքնագլուխ եկեղեցին ունենար, և ունէր, միայն կը ճանչնար Կապադովկիոյ Եկեղեցւոյն նախաթոռութիւնը և անկէ կ'ստանար իր պետը' ձեռնադրութիւնը։

Սակայն միայն հոս կը սահմանափակուէր իր հեղինակութիւնը Հայաստանի Եկեղեցւոյն վրայ և անոր ներքին վարչութեան մէջ միջամտելու իրաւունք չունէր։

Ամէն պարագայի մէջ անուրանալի իրողութիւն է թէ Կեսարիոյ աթոռը մեծ ազդեցութիւն և Հայաստանեայց Եկեղեցւոյ վրայ անժխտելի հեղինակութիւն ունեցած է որչափ ատեն որ Հայաստան Հռոմէական ազդեցութեան տակ մնացած է, այսինքն մինչև Ս. Սահակ որ իրական հիմնադիրն է Հայ Եկեղեցւոյ բացարձակ անկախութեան։

Որոշ է թէ մինչև այն ատեն Կեսարիոյ Ցոյն Արքեպիսկոպոսները Հայաստանը իրենց վիճակ կը համարէին և Հայերը կ'ընդունէին Կեսարիոյ աթոռին հեղինակութիւնը։

Ասոր փաստերէն մին է նաև Կեսարիոյ աթոռին նահանգային Սինոդներուն Հայ եպիսկոպոսներուն մասնակցութիւնը։

Ս. Բարսեղ 372ին Դամասոս Պապին և իտալացի ու ֆրանսացի եպիսկոպոսներուն կը գրէ նամակ մը (Թ. 98) արիոսեան հերձուածին տարածման դէմ, որուն մէջ կը յիշատակէ իրեն համամիտ 31 եպիսկոպոսներուն անունները, որոնց շարքին կը տեսնուին Յուսիկ, Խոսրով և Ներսէս Հայ անուններով եպիսկոպոսներուն յիշատակութիւնը։

Անոնցմէ վերջինը մեծ հաւանականութեամբ Հայոց մեծ հայրապետը պէտք է ըլլայ։ (Հ. Վ. Հացունի, ԲԶՄՊ. 1926, էջ 134. Նաև Dictionnaire de l'histoire Universelle de l'Eglise par L. F. Guerin. Paris, տպ. Migue. 1858-54. Բ. հտ. էջ 1168. Նոյնպէս Օրմանեան Ազգապատում, էջ 214 որ չի ժխտեր հաւանականութիւնը ստորագրութեան Ներսէս Պարթև հայրապետին ըլլալուն, միայն ժողովական որոշումի մը արդիւնքը ըլլալը կը մերժէ, հակառակ որ կը հաստատէ թէ 372 Յունիսին Կեսարիոյ մէջ գաւառական ժողով մը եղած է ըստ Աբբայ Ad. Ch. Peltier, Dictionnaire Universelle et Complet des Concils. Paris. 1847, տպ. Migue. Ա. հատոր, էջ 459)։

Սակայն Հայերը բաւական կանուխ իրենց նկարագիրին դրոշմը տալ սկսած են իրենց Եկեղեցիին և անոր տարապայման ազդեցութիւնը նուազեցնել նկրտած են, մանաւանդ երբ կղերը սկսաւ պետական գործերու միջամտել։

Թերևս Հռոմէական օրինակէն ազդուած Հայ թագաւորներէ ոմանք ուզեցին Եկեղեցին պետութեան շահերուն ծառայեցնել և ընկճել կղերը։ Ասոր համար անհրաժեշտ էր խզել Հռոմէական երկրի մէջ նստող Պոնտոսի էքսարքին կամ Կեսարիոյ Արքեպիսկոպոսին հետ Հայ եկեղեցւոյ կապը։

Արշակ Բ. առաջին թագաւորն է Հայ թագաւորներու մէջ որ անդրանիկ քայլը կ'առնէ այս ուղղութեամբ, Կապադովկիոյ աթոռին սերտիւ կապուած և հոն դաստիարակուած Ներսէս Պարթև կաթողիկոսին



դէմ հակաթոռ կաթողիկոս հռչակելով «ստրուկ ի ստրկաց արքունի» Չունակը, առանց Կեսարիոյ ձեռնադրութեան։ Սակայն կղերը իրեն դէմ ծառացաւ։ Բացի Աղձնեաց և Կորդուաց եպիսկոպոսներէն ոչ մէկ եպիսկոպոս ուզեց մասնակցիլ Չունակի կաթողիկոսական ձեռնադրութեան (Փաւստոս, էջ 163–164)։

Պապ' Արշակի որդին, Ներսէսի մահէն յետոյ (373) «Շահակ ոմն կացուցեալ փոխան նորա առանց մեծի արքեպիսկոպոսին Կեսարու» (Խորեն. Գ. ԼԹ.) իր հօրը քաղաքականութիւնը փորձեց շարունակել, սակայն իր դէմ ունեցաւ մեծ դժուարութիւններ թէ՛ Հայ կղերին, թէ՛ Կեսարիոյ աթոռին և թէ՛ Հռոմի կողմէն, որոնք հաւասարապէս դէմ էին Հայոց թագաւորին ծրագիրին։

Ս. Բարսեղ Կեսարիոյ հայրապետը երբ կը լսէ Շահակին կաթողիկոսացումը առանց իր ձեռնադրութեան, նահանգային ժողով կը կազմէ և «բուռն ցասմամբ մեծապէս» կը գրեն Պապ թագաւորին և Հայ Եկեղեցիին «եւ լուծին զիշխանութիւնն կաթողիկոսութեանն» և կարգադրեցին որ Յուսիկ «մի՛ իշխեսցէ ձեռնադրել զեպիսկոպոսն Հայոց»։ Այսպէս «յայնմ հետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց զեպիսկոպոսն ձեռնադրել» և նոր եպիսկոպոսները «երթային ի քաղաքն Կեսարացւոց եւ անդ լինէին եպիսկոպոսք» իսկ կաթողիկոսն անոնց «ի վերոյ միայն նստէր եւ հաց օրհնէր թագաւորացն» (Փաւստոս Բիւզանդ, էջ 285-6)։

Հայ եպիսկոպոսներուն հակառակ թագաւորին կամքին Կեսարիայէն ձեռնադրութիւն ստանալու յամառիլը ցոյց կու տայ թէ Հայ կղերը կ'ուզէր կապուած մնալ Կեսարիոյ աթոռին, որուն նկատմամբ յարգանք կը տածէր։

Եւ Պապ, գէթ կաթողիկոսին իր կամքովը և ընտրութեամբը և առանց Կեսարիոյ միջամտութեան պաշտօնի ձեռնարկելը ժամանակաւոր յաջողութիւն մը համարելով, տեղի տուած է և համակերպած է եպիսկոպոսներու Կեսարիոյ մէջ ձեռնադրութեան, վասնզի Ս. Բարսեղ 373ին առ Թէոդոս եպ. Նիկոպոլսոյ (Փոքր Հայոց) գրած թուղթին մէջ (Նամակ 121) կ'ըսէ «Գիտասջիր եւս' զի Փաւստոս եկն առ մեզ թղթովք ի Պապայ, որք հայցէին' զի ձեռնադրեսցի յեպիսկոպոս: Այլ յորժամ ի բարեպաշտութենէ քումմէ եւ յայլոց եպիսկոպոսաց խնդրեցաք վկայութիւնս, արհամարհելով զմեօք չոգաւ առ Անթիմոս, եւ ի նմանէ' առանց զեկուցանելոյ մեզ' ընկալեալ զձեռնադրութիւն, դարձ արար»:

Իսկ Անտիոքի Մելետիոս եպ.ին կը գրէ (Նամակ 120) «Կամիմ եւս բարեպաշտութեանդ քոյին գիտել զի Փաւստոս որ յարեալ է ի Պապ, յեղբօրէն Անթիմոսէն ձեռնադրեալ է յեպիսկոպոս' առանց ընդունելոյ զվկայութիւնս, իտեղի պատուականն եղբօրն Կիւրեղի, այն պէս զի Հայաստան լցեալ է խռովութեամբ»:

Ուրիշ թուղթի մը մէջ որ Ս. Բարսեղ ուղղած է Եւսեբիոս Սամոսատացւոց եպիսկոպոսին, կը գանգատի Փրոնդոն (Φρόντων) անունով անձի մը դէմ, որ փառասիրութեամբ և դաւաճանելով իր ուղղափառ հաւատքին' եպիսկոպոս կը ձեռնադրուի, և չկրնալով ժողովրդեան սիրտը ու համակրութիւնը շահիլ «ատելի կը դառնայ բոլոր Հայաստանի» (κοινὸν βδέλογμα πάσις τῆς 'Αρμενίας) (տես, ԲԶՄՊ. 1932, էջ 352)։

Դժբաղդաբար ուրիշ մանրամասնութիւններ կը պակսին։ Սակայն Փաւստոսի պարագան բաւական է ցոյց տալու համար թէ Պապ համակերպելով հանդերձ Կեսարիոյ աթոռին կարգադրութեան, եկեղեցիին վրայ հակակշիռը իր ձեռքերուն մէջ պահելու հնարը գտած էր եպիս-

կոպոսներու ընտրութիւնը իրեն սեպականելով և Կիւրեղի տեղ՝ որ ապահովաբար Եկեղեցիին պետական հակակշիռէն ազատ մնալը պահանջողները ներկայացուցած էին, իր մարդը՝ Փաւստոսը կ'ուզէ ձեռնադրել տալ և այս խոյս տալու համար Ս. Բարսեղի քննութենէն կամ անոր իր դէմ հանած դժուարութիւններէն կը դիմէ անոր հակառակորդին՝ Բ. Կապադովկիոյ մայրաքաղաքին՝ Տիանայի մետրապոլիտին՝ Անթիմոսի և անկէ կ'առնէ ձեռնադրութիւնը։

Սակայն ինչպէս կը տեսնուի քիչ էին Փաւստոսի պէս Պապ թագաւորին յարողներ, և Հայ եկեղեցականներուն շատերը հաւատարիմ կը մնային Կեսարիոյ աթոռին, որուն հեղինակութեան ուժ կու տար նաև Հռոմէական կայսրութիւնը իր քաղաքական հաշիւներուն ձեռընտու գտնալով Հայոց ընդհանուր Եկեղեցւոյ միութենէն անբաժան մնալը։

Ասոր փաստը կու տայ պատմութիւնը արձանագրելով որ Պապին այս ձեռնարկը կատարած օրերուն տիրող խառնակութենէն օգտուելով, Պապը թագաւորացնելու համար Հայաստան եկող Հռոմէական լեգէոններու հրամանատարը Տերենտիոս — որ Ս. Բարսեղի բարեկամն էր և անոր իսկ վկայութեամբ բարեպաշտ և ճշմարտահաւատ մարդ մըն էր, մինչդեռ Ամմիանոս զայն կը ներկայացնէ «աչքերն ի գետին, վախկոտ եւ մելամաղձոտ դէմքով» մարդ մը, որ շատ խռովութեանց պատճառ եղած էր— կայսեր հրամանով Ս. Ներսէսի սպանութենէն քիչ յետոյ (372ին) կը գրէ Կեսարիոյ Արքեպիսկոպոսին որ Հայաստան եպիսկոպոսներ ղրկէ, քանի որ Շահակը, նոյնիսկ Կապադովկեան Եկեղեցիին Սինոդին որոշմամբ ղրկուած էր եպիսկոպոս ձեռնադրելու իրաւունքէն։ Տերենտիոս նոյնիսկ Ս. Բարսեղի ներկայացուցած էր անուններ թեկնածուներու, որոնց մէջ կ'երեւի թէ յոյներ ալ կային։ Ասիկա փորձ մըն էր վերջ տալու Հայ Եկեղեցւոյ նորատաց անկախութեան և զայն ենթարկելու ուղղակի կապոդովկեան աթոռին կամ պետական Եկեղեցիին։

Սակայն Ս. Բարսեղ վերապահութիւն ցոյց կու տայ և կ'ընդդիմանայ օտար թեկնածուներուն՝ իբր անյարմար Հայոց առաջնորդութեան և կ'ըսէ. «Արդ ո՞րպէս մարթ իցէ ինձ, գլուխդ պատուական, հնազանդիլ հրամանացդ եւ տալ եպիսկոպոսունս Հայաստանի, այնքանոյ բարեկամիդ իմոյ եւ գործակցի՝ յոյր ձեռն ակն ունէի զտանել ինձ արս պատկանաւորս, այնու զի ուր բնակեսդ՝ ոչ պակասին եւ բարեպաշտք եւ խոհականք եւ հմուտք լեզուին, եւ որ այլոց եւս սովորութեանց իւրոյ ազգին տեղեակ իցէ» (տես Patrol graga, հտ. 32, Նամակ 99. Հ. Վարդան Հացունի, ԲԶՄՊ. 1926)։

Ս. Բարսեղ առ Տերենտիոս զօրավար ուղղած այս թուղթին մէջ կը յիշէ Հայաստանի եպիսկոպոսներուն մէջ խաղաղութիւն հաստատելու համար իր կատարած ջանքերը և կանոններ տուած ըլլալը(1)։

Ս. Բարսեղ և Տերենտիոս, երկուքն ալ նոյն նպատակին կը ձգտին անտարակոյս, միայն մեթոտներու մէջ կը տարբերին։ Մին կ'ուզէ խոհական ու մեղմ միջոցներով Կապադովկեան Եկեղեցիին ազդե-

(1) Օրմանեան (Ազգապատում, էջ 226 – 227) կը կարծէ թէ Բարսեղի այս խօսքերը Փոքր Հայոց եպիսկոպոսներու կը վերաբերին։ Սակայն իրեն անծանօթ մնացած են կամ անտեսել ուզած է Տերենտիոսի առ Բարսեղ գրած նամակը որ շատ բան կը լուսաբանէ։



ցութեան տակ պահել Հայ Եկեղեցին և միւսը կ'ուզէ զինուորականի վայել ընթացքով մը կտրուկ կերպով իր նպատակին դիմել, և զայն պետական Եկեղեցւոյն մէջ ձուլել անմիջապէս առանց այլեւայլի։

Անշուշտ Ս. Բարսեղ շատ լաւ կը տեսնէր թէ մէկ հարուածով դժուար էր կորզել Հայ Եկեղեցիին իրաւունքները, երբ Պապ և իր համախոհները այնքան եռանդով կը պաշտպանէին զայն, նոյնիսկ հնարքներ ի գործ դնելով, առանց եկեղեցական օրէնքները խախտելու, ձեւեր գտնելու, Հայ Եկեղեցին չենթարկելու օտար ազդեցութեան, և արդէն իսկ գտած էին, համակերպելով եպիսկոպոսներու Կեսարիա ձեռնադրութեան սակայն իրենց ձեռքը պահելով անոնց ընտրութիւնը, որ պետութեան հակակշիռին տակ էր։

Այնպէս որ առերեւոյթ խաղաղութիւն մը կամ հաշտեցողութիւն մը ստեղծուեցաւ երկու Եկեղեցիներու միջեւ, որոնցմէ Կապադովկեանը համակերպեցաւ Հայ Եկեղեցւոյ պետը ձեռնադրելու իրաւունքէն հրաժարելու և Հայաստանեայցը՝ զիջաւ որ իր եպիսկոպոսները Կեսարիա ձեռնադրուին, սակայն ո՛չ առաջինը հրաժարեցաւ լիակատար հպատակութեան մը ենթարկելու իր ձգտումէն և ո՛չ ալ երկրորդը ձեռնթափ եղաւ դէպի լիակատար անկախութեան իր ջանքերէն։

Այնպէս որ երբ Արշակունեանց թագաւորութիւնը քիչ յետոյ երկուքի բաժնուեցաւ (386–387) և վերջապէս ջնջուեցան Յունական իշխանութեան տակ գտնուող մասին եպիսկոպոսները, մանաւանդ Յուստինիանուպոլսոյ (= Երզնկա), Կամախի և Թէոդուպոլսոյ (= Կարին) թեմերը անցան Կեսարիոյ էքսարքի իշխանութեան տակ և խառնուեցան Առաջին Հայոց կամ Սեբաստիոյ Մետրոպոլիտի գաւառին մէջ (Աղեքսանդրեան Վ. Պատմ. Սեբաստիոյ, էջ 66)։

Խորենացի անշուշտ ասոր կ'ակնարկէ երբ կ'ըսէ թէ Մեսրոպ «ուսոյց զբնաւ կողմանս բաժնոյն Պարսից, բայց Յունաց մասնէն որք ԸՍՏ ԶԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆՆ ՏՈՒԻԳԱՆԵՑԱՆ՝ ՎԻՃԱԿԵԱԼ ՅԱԹՈՌՆ ԿԵՍԱՐՈՒ» (Դպ. Գ. գլ. ԾԴ.)։

Նոյն այդ պատճառով է որ անշուշտ երբ Սահակ Պարթեւ Յունաց բաժինը եկաւ 417ին պէտք եղած կերպով չընդունուեցաւ և այս պատճառով ինքն բողոք բարձաւ գրաւոր կերպով Թէոդոս Բ.ի, ըսելով թէ «ոչ հանդիպեցայ ընդունելութեան յիմում վիճակիս ի հրամանէ վերակացուաց սոցա ... Արդ հանոյ թուեցի տէրութեան ձերում, ոչ անիշխան առնել զմեզ ի մերում վիճակիս»։ Սահակ գրեց նաեւ Կ. Պոլսոյ Ատտիկոս պատրիարքին(1), որպէսզի բարեխօսելով կայսեր մօտ, օգնէ իրեն։

Այս թուղթերը Մեսրոպի և Վարդան Մամիկոնեանի միջոցով ղըրկեց Կ. Պոլիս։ Մեսրոպ ունենալով նաեւ Մելետինէ նստող Անատոլ զօրավարին յանձնարարականը, գնաց Բիւզանդիոն։

Կայսեր և պատրիարքին պատասխանները նպաստաւոր չէին, բայց և այնպէս Թէոդոս Բ. թերեւս զիջելով Սահակին, անոր անձնական հեղինակութեան համար կ'ըսէ թէ «գրեցաք զի ... զքեզ պատուով ընկալցին, իբրեւ զարդարեւ Վարդապետ իւրեանց հանգոյն Արքեպիսկոպոսին Կեսարու եւ դարմանք եւ ծախք յարքունուստ տացին» (Խորենացի, դպ. Գ. գլ. ԾԷ.)։ Բայց ասիկա ի՞նչ կը նշանակէր, խնդրական է։

(1) Ազգով Հայ և Սեբաստացի։

Գերապայծառ Անդրէաս Ալեքսանդրեան (տես Պատմ. Սեբաստիոյ, էջ 67) այնպէս կը հասկնայ թէ «այս կերպով Հայոց Մեծաց եպիսկոպոսապետին հաւանութիւն եւ հրաման կը տրուի յիշուած երեք գաւառաց՝ Կարնոյ, Երիզայ եւ Կամախի, վարել իշխանութիւն իբր հայրապետ (էքսարք) «հանգոյն արքեպիսկոպոսին Կեսարու»: Սա անկից ետեւ եւս իրաւունք ունէր այն երեք եպիսկոպոսարանաց, այսինքն անոնց մէջ բնակած սակաւաթիւ Յունաց կամ Յունադաւանաց վրայ: Որովհետեւ այն նշանաւոր դէպքէն ետքն եւս, նոյն քաղաքաց եպիսկոպոսները կը տեսնուին յիշատակուած գրուածոց մէջ Սեբաստիոյ Մետրոպոլտութեան ներքեւ, ի բաց առեալ անոնք անոնց մէջ բնակած հայերը»:

Այս մեկնութիւնը սակայն շատ տրամաբանական չի թուիր, նկատի ունենալով օրթոտոքս Եկեղեցիին վարիչներուն մտայնութիւնը և Բիւզանդական պետութեան մէջ տիրող կարգերը, որոնք երբեք չէին թոյլ տար միեւնոյն քաղաքին մէջ երկու եպիսկոպոսներու գոյութեանը. մին Հայածէսներու և միւսը՝ Յունածէսներու համար:

Այնպէս որ եթէ հետագայ ժամանակներու մէջ Յունական բաժինի մէջ գտնուող այդ քաղաքներու եպիսկոպոսները կը յիշատակուին Սեբաստիոյ Մետրոպոլտութեան ներքեւ, պէտք է ընդունիլ թէ հին դրութիւնը շարունակուած է և Հայոց Հայրապետները բաւական երկար ատեն ուղղակի իրենց աթոռին չեն կրցած ենթարկել այն շրջանակին եպիսկոպոսութիւնները, որոնք Կեսարիոյ աթոռին ենթարկուած մնացած են, մինչեւ որ Յունական իշխանութենէ ելած են այդ երկիրները:

Երբեք Թէոտոսի հրահանգէն՝ «հանգոյն Արքեպիսկոպոսին Կեսարու» պատուով ընդունելու համար Սահակ կաթողիկոսը, կարելի չէ հետեւցնել թէ անիկա միեւնոյն ատենը իշխանութեան կիրարկումի մը արտօնագիրն էր:

Օրթոտոքս Եկեղեցին միշտ Կեսարիոյ էքսարքը կը նկատէր պետը 12 մետրոպոլիտութեանց, որոնց մէջ էին Փոքր Հայոց երկու գաւառները, Առաջին Հայք (Սեբաստիա) և Երկրորդ Հայք (Մելետինէ): Ոմանք այս էքսարքութեան սահմաններուն մէջ կը դնէին նաեւ Մեծ Հայքը, որուն վրայ գէթ Կեսարիոյ աթոռը միշտ գերակայութեան մը յաւակնութիւնները պահեց, և կամ գէթ Մեծ Հայոց այն մասերը որ Բիւզանդական տիրապետութեան տակ էին, ինչպէս վերոյիշեալ երեք քաղաքները, յամառեցաւ իր իշխանութեան տակ պահել: Le Quien (Orieus Christianus I. էջ 835) և Կղեմէս Կալանոս (Միաբանութիւն Հայոց Սուրբ եկեղեցւոյն ընդ մեծի Սուրբ Եկեղեցւոյն Հռոմայ 1690) կը հաստատեն թէ Հռոմի իշխանութեան տակ գտնուող Արեւմտեան Հայոց եկեղեցիները Կեսարիոյ էքսարքին իրաւասութեան տակ կը գտնուէին և ոչ Հայոց կաթողիկոսին: Նոյնիսկ հոս ի դէպ յիշել թէ երբ Սահակ Պարթեւ աքսոր գնաց (428ին) և իր տեղը Սուրմակ կաթողիկոս դրուեցաւ պարսից բաժինին մէջ, Անատոլիոս, ընդհանուր կուսակալը որ Մելետինէէն նստոց ունէր իրեն, Յունական Հայաստանի մէջ հոգեւորական գլուխ նշանակեց Հաւուկ Կուկուճացին (Թովմաս Արծրունի, 1852, էջ 80) կամ Կուկայառիճցին, որ թէպէտ եպիսկոպոսապետ կը կոչուի, այլ հաւանօրէն Կեսարիոյ էքսարքին ենթարկուած մետրոպոլիտ մըն էր (Օրմանեան, Ազգապատում, էջ 306):

Այս տեսութեան ոյժ կուտայ Կ. Պոլսոյ ժողովին այն կանոնը որուն համաձայն «իսկ եկեղեցիք Աստուծոյ, որ ի խժական ազինս հաստա-



տեալք, ի դէպ է զի ըստ սովորութեան որ ի հարց պահեալ է, յանձանձեսցին»:

«Խժական ազգերու» շարքին մէջ էին անշուշտ նաեւ Հայերը, քանի որ այսպէս որակել կը սիրէին Հռոմէացիք կամ Բիւզանդացիք անոնք որ իրենց տիրապետութեան սահմաններէն դուրս կը մնային:

Իսկ սահմանէն ներս հնար չէր որ Օրթոտոքս Եկեղեցին ո և է զիջում ընէր, և թողուր որ Հայոց կաթողիկոսը եպիսկոպոսներ անուանէր Սեբաստիոյ, Մելետինէի(1) և այլ Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուած գաւառներու համար, ինչպէս Յովհաննէս Կաթողիկոս, Վարդան Պատմիչ, Ուռպելեան, կ'ուզեն հաւատացնել բոլորովին անտեղի կերպով:

Պատմութեան բոլոր տուեալները կը հերքեն Ժ. դարէն առաջ այդ շրջանակներուն մէջ Հայ եպիսկոպոսներու գոյութիւնը:

Մինչեւ Ժ. դարուն վերջերը, մէկ մէկ եպիսկոպոս կամ մետրոպոլիտ միայն կը նստէին Սեբաստիա և Մելետինէ, ինչպէս նաեւ Փոքր Հայոց միւս քաղաքները, և կը վարուէին յոյն ծէսով և կը հետեւէին յունաց, թէեւ մեծ մասը Հայ էին ազգով և գիտէին Հայ լեզուն, վասնզի բնակչութեան ստուար մեծամասնութիւնը Հայ էր ծագումով:

Հայաստանեայց Եկեղեցին ինչպէս տեսնուեցաւ մինչեւ Հռոմէական տիրապետութեան վերջերը կախում կամ ակնածալից յարաբերութիւններ ունեցած է Կապադովկեան աթոռին հետ, որուն վրայ մանաւանդ Դ. դարուն կը փայլէին Կապադովկիոյ Եկեղեցիին ամէնէն նշանաւոր ներկայացուցիչները:

Ուստի անհաւանական չէ որ Գրիգոր Լուսաւորիչի օրերէն հասած աւանդութեան մը համաձայն նոյնիսկ շատ մը Հայ ազնուական պատանիներ, մասնաւորապէս եկեղեցական ասպարէզի պատրաստուողները, դիմած ըլլան Կեսարիա, ուսում ստանալու համար:

Նոյնիսկ Հայաստանեայց Եկեղեցւոյ առաջին կազմակերպիչը և Հայաստանը վերջնապէս քրիստոնեայ դարձնողը, Գրիգոր Լուսաւորիչ, ինքն Կեսարիոյ մէջ սնած և ուսած, և իր առաջին օգնականներուն մեծ մասը Կեսարիոյ և Սեբաստիոյ կողմերէն բերած ըլլալով, բնական էր որ Հայ Եկեղեցւոյ պաշտամանց և արարողութեանց հիմը Կապադովկեցւոց Եկեղեցւոյն յատուկ ծէսը պիտի ըլլար, ինչ որ այժմ Ս. Բարսեղի անունով ճանչցուած է (Օրմանեան, Ազգապատում, էջ 101):

Գրիգորի վերագրուած 30 կանոններու նիւթը որ ընդհանրապէս կանոնազանցներուն— մասնաւորապէս քահանայական և ամուսնական — ապաշխարութեանց շուրջը կը դառնայ, ներշնչուած ըլլալ կը

(1) Քաղկեդոնի ժողովին (451) մասնակցող եպիսկոպոսներու շարքին կը յիշուի Կոստանդին եպիսկոպոս Մելետինոյ Հայոց, ինչպէս նաեւ Արիսիոս եպ. Մելետինոյ, որով կը հաստատուի որ թէ՛ Յունածէս և թէ՛ Հայածէս երկու եպիսկոպոս գտնուած է միեւնոյն գաւառին մէջ, ինչ որ շատ նշանակելի կէտ մըն է (Ալեքսանդր վրդ. Պալճեան, Պատմ. կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, Վիեննա, 1878, էջ 15) սակայն բոլորովին անմեկնելի չէ, վասնզի Մելետինէ կը գտնուէր Փոքր Հայոց մէջ, և երկու ազգերը՝ իրարու հետ քով քովի կ'ապրէին, իրենց լեզուները պահելով, այնպէս որ կարելի չէր մէկ ծէսով երկու ազգերն ալ գոհացնել:

թուի նոյնպէս Կապադովկեան Եկեղեցւոյ Հայրերէն։ Մասնաւորապէս անոնց մէջ կը յիշուի Կիրակիին պահպանութիւնը, և կախարդներու և գերեզմանակրկիտներու պատիժները։ Մանաւանդ այս վերջինը՝ կը կարծեմ թէ ուղղակի Կապադովկեան ազդեցութեան տակ ստեղծուած է, վասնզի այս այպանելի սովորութիւնը Կապադովկեան էր ինչպէս բացատրեցի (տես Ա. մաս, էջ 39–41)։

Յոյն դաստիարակութիւն ստանալու համար Հռոմէական երկիրներ և մասնաւորապէս Կեսարիա դիմող ուսանողներու կարգին կրնանք զետեղել Ներսէս Պարթև հայրապետը և անոր զաւակը Սահակ, որոնք Կեսարիոյ և Կ. Պոլսոյ մէջ ուսում առած էին։

Դուրեան Պատրիարք կ'ըսէ թէ «Շատ հաւանական է որ Յուսիկ կանուխէն հեռացուցած ըլլայ իր թոռնիկն՝ (Ներսէսը՝ որդին Աթանագինէի) մանուկ հասակէն ղրկելով զայն Կեսարիա (Կապադովկիայ) «ի հրահանգս»(1) վասնզի դառն եղած էր իրեն համար այն փորձը՝ զոր ունեցաւ իր երկուորեակներու(2) վրայ՝ պալատական ապականեալ մթնոլորտին մէջ պահելով զանոնք» (Ազգ. Պատմ. էջ 242 - 243)։

Ներսէս Պարթև, իր կնոջ Սանդուխտի հետ Կեսարիա էր և ուսման կը հետևէր երբ երջանկութիւնը ունեցաւ իր անդրանիկ զաւակը՝ Սահակին (348 սեպտ. 29ին) ծնունդը ողջունելու և դժբախտութիւնը իր կինը կորսնցնելու (349)։

Հոն իրեն ընկերակից էին հաւանօրէն Գրիգոր Նազիանզացի, Գրիգոր Կեսարացի և Գրիգոր Նիւսացի որոնք գրեթէ իրեն հասակակից են։

351ին Բիւզանդիոն ալ գտնուած է իբր սենեկապետ Արշակ թագաւորին, յատուկ պաշտօնով հոն ղրկուած ըլլալով և ուսումը շարունակած։

Այսպէս պատրաստուած մարդ մը, որ ճաշակը ունէր ուսման և դաստիարակութեան, իր ստացած ուսումը արժեցուց, անշուշտ Կեսարիոյ մէջ իր տեսածներուն և կրած ներշնչումներուն տպաւորութեան տակ, աշխատելով ուսման և դպրութեան սէրը արծարծել նաև Հայաստանի մէջ, ուստի կաթողիկոս դառնալէն յետոյ «կարգէր դպրոցս յունարէն եւ ասորերէն յամենայն գաւառս Հայոց» (Փաւստոս, էջ 105)։

Հելլէնականութեան հոսանքը որ սկսած էր Հայաստանի մէջ Տրդատ Գ.ի օրերէն Արշակ թագաւորի և Ներսէս հայրապետի օրերուն այսպէս նոր զարկ մը ստացաւ։

Այս դպրոցներուն աշակերտները յոյն և ասորի լեզուներով զարգանալով՝ հոգևորական տեսակէտէն ալ մեծ ծառայութիւն մատուցին, որովհետև անոնք էին որ եկեղեցիներու մէջ Ս. Գրոց ընթերցուածները կը վերծանէին և կը թարգմանէին, իբր վերծանող և թարգմանիչ:

Հայոց մեծ հայրապետին՝ Ներսէս Պարթևի՝ Արշակ Բ.ի՝ գործակցութեամբ և քաջալերութեամբ Հայաստանի մէջ կատարած գեղեցիկ գերը, կարծես թէ մէկ անդրադարձութիւնը կամ նմանողութիւնն է

(1) Ըստ Խորենացիի։

(2) Պապ և Աթանագինէ որոնք եկեղեցական չեղան, և շանթահար սպանուեցան 349ին իրենց հօր մահէն մէկ տարի յետոյ։



անոր որ Ս. Բարսեղ կը կատարէ Կապադովկիոյ մէջ նոյն օրերուն գրեթէ։

Այնպէս որ մեր պատմիչները (Փաւստոս և Մեսրոպ երէց) անոր կը վերագրեն այնպիսի հրաշքներ և դիւցազնական առաքինութիւններ և արարքներ, որոնք ընդհանրապէս Ս. Բարսեղի կ'ընծայուին (Հ. Յովհաննէս վրդ. Թորոսեան, 1935, Բազմավէպ, էջ 351)։

Նմանութիւնը ակներև է և ներշնչումը անուրանալի։

Խորենացի Աշտիշատի ժողովին (354) առթիւ ալ կ'ըսէ թէ Ներսէս «զբարեկարգութիւնն զոր ետես ի յունաց աշխարհին. մանաւանդ ի թագաւորեալ քաղաքն, ի սմա նկարագրէ»:

Իր հաստատած մարդասիրական հաստատութիւնները, դպրոցները, հիւանդանոցները, որբանոցները, աղքատանոցները ամենամեծ մասամբ Հռոմ-Յոյն նմոյշներու համաձայն կազմակերպուած և յաճախ նոյնիսկ Հռոմէական երկիրներէ եկած մարդոց տեսչութեան տակ դրուած էին, ինչպէս Փոստոս կամ Փաւստոս Բիւզանդացիի տեսչութեան տակ էին աղքատանոցները։

Իր ջանքերը կարօտեալներու օգնութեան համար, կատարելապէս Ս. Բարսեղի գործունէութիւնը կը յիշեցնեն և հետևաբար իրենց ներշնչարան ունին Կապադովկեան Եկեղեցին և անոր վարիչ Ս. Հայրերը։

Իր ջանքերովն է որ վանական կազմակերպութիւն կը հաստատուի Հայաստան, ճիշդ այն թուականներուն, երբ Բարսեղ նոյնը կը կատարէր Կապադովկիոյ մէջ, հիմնելով մենաստաններ և յօրինելով վանական կարգի սահմանադրութիւն մը՝ որ երկար ժամանակ Արևելքի համար իբր կանոն ծառայեց (Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 247)։

Լուսաւորիչ՝ Կապադովկեան մենակեացներու դրութիւնը Հայաստան ներմուծած էր, իսկ վանքերու կազմակերպութիւնը ըրած էր Ս. Ներսէս, դարձեալ Կապադովկիայէն ընդօրինակելով, այնպէս որ միևնոյն կարգով և ուղղութեամբ զարգացած է վանականութիւնը երկու երկիրներուն մէջ (Տոքթ. Յ. Թօփճեան, Ծագումն Հայ Վանականութեան, ԼՈՅՍ 1905, էջ 360, 468, 538)։

Vollet կը հաստատէ թէ մասնաւորապէս Հայաստանի մէջ է որ Բարսեղի հին կանոնը պահուած էր իր հարազատութեամբ (Դուրեան, նոյն, էջ 247)։

Zimmerer՝ հիմնուելով անշուշտ Սոզոմենոսի վկայութեան վրայ, — ինչպէս արդէն յիշուեցաւ — Հայաստանի, Պափլագոնիոյ և Պոնտոսի համար կրօնաւորութեան գլխաւոր զարգացնողը կը համարէ Ս. Բարսեղի ժամանակակից խստաբարոյ Եւստաթիոս Սեբաստիոյ եպիսկոպոսը՝ որ Հայ էր ազգով(1)։

(1) Այս եկեղեցականին համար (որուն վրայ խօսուած է տես վերը էջ 262, 265 և այլն) կը պատմուի թէ կարգալոյծ եղած էր իր հօրմէն՝ Կեսարիոյ եպիսկոպոսէն «քանզի զգենոյր հանդերձս անպատշաճս քահանայութեան» (Սոկրատ, Եկեղեցական Պատմ.) սակայն յետոյ փոխած է իր հագուստին ձևը քահանաներու սովորական զգեստը հագած և մինչև իսկ վանական կարգի սահմանադրութիւններ հեղինակած է (Սոզոմինոս, Եկեղեցական Պատմ.)։ (Դուրեան Ազգ. Պատմ. էջ 255)։

Ուրիշ գերման գիտուն մը՝ աւելի խորապէս ուսումնասիրած Արեւելքը Հ. Գելցեր, կը պնդէ թէ Ներսէս իր գործունէութիւնը ծաւալած է Բարսեղի ազդեցութեան տակ և անոր հայրապետութեան օրով հայ վանականութիւնը «հսկայական թռիչ մը» առած է (Տոքթ. Ց. Թոփճեան, Ծագումն հայ վանականութեան, ԼՈՑՍ, 1905, էջ 301)։

Բրոֆ. Լօօֆս կը պնդէ թէ Եւստաթիոսի մասին Սոզոմենոսի վկայութիւնը Հռոմէական տիրապետութեան ներքեւ գտնուող Հայոց համար կրնանք արժեցնել, քանի որ ժամանակակից Հայ պատմագիր Փաւստոս բոլորովին կ'անգիտանայ անոր դերը և Ս. Բարսեղի նկատմամբ ունի հիացում (Նոյն)։

Բայց Վանականութեան հիմնադիրը Ս. Ներսէս ըլլայ թէ Եւստաթիոս, երբեք մեծ տարբերութիւն չ'ըներ, վասնզի երկու պարագային ալ, կը հաստատուի թէ ճգնաւորութեան և կրօնաւորութեան ներշընչումը մեր մէջ մուտ գտած է Կեսարիայէն, քանի որ Սեբաստիա՝ Կապադովկիոյ Եկեղեցւոյն ենթակայ աթոռ մըն էր և ինքն ալ կը հնազանդէր Կեսարիոյ աթոռին, և ժամանակագրապէս ալ ճիշդ կը համաձայնէր Ներսէս Պարթեւ հայրապետի ժամանակին, քանի որ Եւստաթիոս եպիսկոպոս ժամանակակից էր Ս. Բարսեղի՝ Ս. Ներսէսի ժամանակակիցին։

Հայ Եկեղեցւոյ ամէնէն նշանաւոր դէմքերէն Ս. Սահակ Պարթեւ Ս. Ներսէսի զաւակը, ծնունդ Կեսարիոյ, նոյնպէս սնած էր հոն և Կ. Պոլիս, մտաւորապէս։

Ղազար Փարպեցի (էջ 16) անոր մասին խօսելով կ'ըսէ թէ «յոյժ առլցեալ անձնուցանէր վարժիւք զբազում գիտնովքն Յունաց, եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն եւ հռետորական յորդասաց յայտնաբանութեան, եւս առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւք», և ունեցած էր «աշակերտս վաքունն ըստ իմաստութեան Սպուտէից» (Խորենացի) այսինքն ժրաջան կրօնաւորաց, որոնց օրինակը տեսած էր Կեսարիա, Բարսեղ Կեսարացիի կազմած վանականութեան մէջ, ամէնքն ալ «արք կրօնաւորք, խարազնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, որք յար ընդ նմա շրջէին»։ Ասոնք ցոյց կուտան թէ ան կը գործէր այն տպաւորութեան տակ որ իր ուսումնավայրին և մանկութեան բնակավայրին մէջ ստացած էր։

Այսպէս, մեր բոլոր Հայրապետները մինչեւ Սահակ մեծ, մասամբ ո՛չ միայն իրենց ձեռնադրութիւնը Կեսարիայէն ստացան այլ նաեւ իրենց ներշնչումները։

Ո՛չ միայն կաթողիկոսները, այլ նաեւ եպիսկոպոսներէ ոմանք հոն առին իրենց ուսումը նաեւ ձեռնադրութիւնը, և բարեկամ ու հետեւող եղան Կեսարական աթոռին։

Պատմութիւնը կը յիշատակէ թէ Ս. Սահակ 417-418ին երբ յունական բաժինն կը գտնուէր, սպասելով կայսեր արտօնութեան այցելած է կրկին Կեսարիա, տեսնուելու համար Փիրմոս Կեսարիոյ հայրապետին հետ։

Հետեւաբար անվարան կարելի է յայտարարել թէ քրիստոնէութիւնը, որ Հռոմի հետ հայոց յարաբերութեան և չփման մտնելէն ալ շատ ուշ կուգար Կապադովկեան Եկեղեցւոյն խողովակով տիրապետել Հայոց հոգիներուն, կ'ստեղծէր սերտ մտաւորական և կրօնական յարաբերութիւններ Հռոմէական աշխարհին — և մասնաւորապէս անոր



Հայաստանի դրացի՝ Կապադովկիոյ աշխարհամասին— և Հայաստանի միջեւ և մեր երկիրը կ'ենթարկէր Հռոմի քաղաքակրթական ներգործութեան։

Կապադովկեան Եկեղեցիին ազդեցութեան կը պարտի Հայաստան յունական դպրութեանց տրուած կարեւորութիւնը, վասնզի Կեսարիոյ աթոռը, որուն նկատմամբ այնքան յարգանք ու սէր կը տածէին Հայերը կը վարուէր յունարէն լեզուով, և իր նշանաւոր դէմքերը կը գրէին անով։

Հայերը հաղորդակից ըլլալու համար անոնց մտքի արտադրութեանց, իրենք ալ պարտաւոր էին մշակել յոյն լեզուն որ այդ ժամանակները, Արեւելքի մէջ տիրող լեզուն դառնալ սկսած էր։

Հետեւաբար քաղաքական միջամտութիւնը որ Հռոմ ի գործ կը դնէր Հայաստանի և Հայկական գործերու վրայ, ջանքերը որ ան կը կատարէր Հայաստանի մէջ իրեն կուսակիցներ ստեղծելու համար, և վերջապէս քրիստոնէութիւնը՝ որ դէպի Արեւմուտք Հայոց հակումը կը շեշտէր, Հայերը կը կապէին Կեսարիոյ և անխուսափելի կը դարձնէին յարաբերութիւնները և փոխադարձ երթեւեկները Կապադովկեան և Հայաստանեայց աշխարհներուն մէջ, և մեծ թուով Հայեր կը փոխադրուէին Հայաստանի դրացի այս երկիրը, մանաւանդ այն օրերուն երբ Հռոմ երբեմն ապիկարանալով և տկարանալով կը պարտաւորուէր լքել մեր երկիրը և քաշել իր լեգէոնները հարկադրելով գրեթէ իր կուսակիցները՝ որ իրենք ալ մեկնին Հռոմէական բանակներուն հետ, վերահաս վտանգէ մը փրկելու համար և ապաստանին Հռոմէական հողեր։

Երբեմն կը պատահէր նոյնիսկ որ Հռոմ ինքն բռնի տեղափոխէր իր հակառակորդները իր երկիրները, որպէսզի իբր խռովարար տարրեր, անոնք չդաւէին իրեն դէմ։

Եւ այսպէս Փոքր Ասիոյ արեւելեան մասերը կը լեցուէին հետզհետէ Հայերով, և կը գրաւէին այդ վայրերու բնակչութեան մէջ կարեւոր տեղ և կը կատարէին նշանակելի դեր։

## Դ.

## ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՄԷՋ ՀԱՅԵՐՈՒ ԿԵԱՆՔԸ ՀՌՈՄԷԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ

Զանազան պատճառներով Հայաստանէն մեկնող Հայերը, ինչպէս բացատրուեցաւ, կը հաստատուէին Հռոմէական Փոքր Ասիոյ մէջ, որուն ամենամօտաւոր շրջանակը, այն գաւառներն էին որ Առաջին Հայք և Երկրորդ Հայք անունները կը կրէին և Եփրատէն Ալիս տարածուող երկիրներու մէջ կը գտնուէին։ Հետեւաբար արդէն իսկ մեծամասնութեամբ Հայ բնակչութիւն ունեցող այդ շրջաններու հայացումը աւելի մեծ համեմատութիւն կ'առնէր և Հայոց թիւը շատ աւելի կ'ստուարանար հոն։ Սակայն Հայերը արդէն իսկ Հայկական երկիրներ համարուած այս աշխարհամասին մէջ տեղաւորուելով չեն բաւականացած այլ նաեւ Ալիսէն ալ Արեւմուտք մինչեւ Բիւզանդիոն տարածուող երկիրներուն մէջ ալ հաստատուած, ապրած և զարգացած են։

Հայերու այս շրջանակներուն մէջ մեծ թիւ մը ունենալու փաստը, ո՛չ միայն տակաւին Փոքր Հայք անունին պահպանութիւնը, այլ անոր աւելի ընդարձակ տարածութիւն մը ստանալն է։

Նոյնպէս նշանակելի է սա իրողութիւնը թէ Մեծն Բարսեղ Հայրապետը (370–379†) Սատաղ ուղեւորած ատեն Փոքր Հայոց եպիսկոպոսական աթոռներուն համար լեզու գիտցող մարդիկ փնտռած է (Migne. Patrol, 32, 502), ինչ որ ցոյց կուտայ թէ մինչեւ Դ. դարուն վերջերը Փոքր Ասիոյ հայկական ծագմամբ բնակչութիւնը ո՛չ միայն մեծամասնութիւն մը կը կազմէր այլ նաեւ տակաւին կը պահէր իր լեզուն և ազգութիւնը։ Անոնք իրենց հայկական նկարագիրը պահած էին, վասնզի երբ Ս. Բարսեղ «հաստատեցի խաղաղութիւն ի մէջ եպիսկոպոսաց Հայոց» կ'ըսէ և «ետու կանոնս վասն իրաց յորս անտարբերութեամբ մեղանչէին Հայք» (տես Թուղթ 99), երբեք տարբերութիւն չի դներ Մեծ ու Փոքր Հայոց եպիսկոպոսներուն միջեւ, ինչպէս կը կարծէ Օրմանեան (Ազգապատում, էջ 227) այլ կը խօսի ընդհանուր առմամբ ինչպէս կը խորհի Հ. Հացունի (ԲԶՄԳ. 1926)), հիմնուելով մասնաւորապէս Տերենտիոս հռոմէացի զօրավարին նամակին վրայ ուղղուած առ իր բարեկամը՝ Ս. Բարսեղ (տես վերը, էջ 282)։

Սակայն մասնաւորապէս Եփրատէն ասդին գտնուած և հայաբնակ դարձած երկիրներու Հայ եպիսկոպոսները, որոնք յատկապէս բնակչութեան մէջ Հայ մեծամասնութիւն մը գտնուելուն համար Հայերէն առնուած էին, աւելի սերտօրէն կապուած էին Կեսարիոյ աթոռին, քան Մեծ Հայքի եպիսկոպոսները որոնք Հայ կառավարութեան կողմէ ընտրուած յաճախ յատկապէս կ'առնուէին անոնցմէ որոնք Հայ Եկեղեցւոյ անկախութեան համաձայն էին։

Ս. Բարսեղ յաճախ կը յիշէ իր թուղթերուն մէջ Չորեքքաղաքեան Հայք (Τετράπολις Ἀρμενία) ըսուած կարեւոր թեմ մը, որ Փոքր Հայքի մէջ կը գտնուէր՝ իր հոգեւոր իրաւասութեան տակ։ Փոքր Հայքի մէջ գտնուող եպիսկոպոսանիստ քաղաքները, Սեբաստիա, Նիկոպոլիս, Սատաղիա, Գաղութք Հայոց (Κολονία Ἀρμενίας) կոչուածը, կը կազմէին հայաշատ կեդրոններ։ Ասոնց գլխաւորն էր Սեբաստիա, և իրենց միութիւնը կը կոչուէր Չորեքքաղաքեան Հայք։ Սոյն քաղաքներուն եպիսկոպոսները ընդհանրապէս ծագումով Հայ էին, սակայն յոյն կրթութեամբ սնած ու մեծցած, անուամբ ալ յունացած, ինչպէս էին Պրոյերիսիոս (Պարոյր), Ելպիտիոս (Յուսիկ) և այլն։

Այդ եպիսկոպոսներէն ոմանք — ինչպէս Եւլալիոս՝ Սեբաստիոյ առաջնորդը, Ելպիտիոս՝ Կոմանայի, Եւիթիոս՝ Սատաղեայ և Ատրիկէս (յոյնը Κρήτης կ'ըսէ), չորսն ալ հայազգի, մասնակցեր են Նիկիոյ Ս. Ժողովին (325)։

Եւիթիոսէն վերջը Սատաղիոյ եպիսկոպոս եղաւ Կիւրեղ, Κύριλλος Ἀρμενίας, կոչուածը, որու դէմ ժողովուրդը գրգռուած և ըմբոստացած ըլլալով, Ս. Բարսեղ ստիպուեցաւ անձամբ երթալ Սատաղ և հաշտեցնել հօտը իր հովիւին հետ։

Փոքր Հայքի մէջ կ'երեւի թէ յաճախ կը պատահէին այս տեսակ գժտութիւններ և շփոթութիւններ, որոնց համար Ս. Բարսեղ կը հարկադրուէր «կտրել՝ անցնիլ՝ ամեն ժամանակ հայկական ձիւնապատ լեռները, խաղաղեցնելու եւ բարեկարգելու համար Հայ բեմերը», ինչպէս կը գրէ ան իր թուղթերուն մէջ գանգատելով։



Ս. Բարսեղ շատ աւելի խիստ գանգատներ յայտնած է Սեբաստիոյ նշանաւոր Եւստաթիոս եպիսկոպոսին դէմ, (1), որ պատմութիւնը կը ներկայացնէ իբր ճարտար, գործունեայ և յաջողակ բայց յեղյեղուկ, ըմբոստ և անհանդարտ եկեղեցական մը որ իր ամէն գացած տեղը յուզում և շփոթութիւն յառաջ կը բերէր։

Անիկա մերթ ուղղափառութեան ջատագով, և մերթ՝ թիւր ու մոլար վարդապետութեանց կուսակից և պաշտպան, երբեմն չափազանց ճգնաւոր և խստակրօն, երբեմն ալ՝ թոյլ և սանձարձակ իր վարքին և գործերուն մէջ, փառասէր և կռուարար, հազիւ թէ յաջողած ձեռք ձգել եպիսկոպոսութիւնը, Սեբաստիոյ պէս կարեւոր աթոռի մը, սկըսաւ մաքառիլ Ս. Բարսեղի դէմ խօսքով և գրիչով։ Իր յարձակումներուն մէջ այնքան խիզախ եղաւ որ Կեսարիոյ մեծ հայրապետը ստիպուեցաւ խզել իր յարաբերութիւնները անոր հետ և նոյնիսկ Ս. Գրիգոր Նազիանզացին որ բնաւորութեամբ հեզ ու ներողամիտ էր, չքաշուեցաւ կոչել զայն «խուժադուժ հայ», անշուշտ Ս. Բարսեղի գրութիւններէն ազդուած, քանի որ ինքը ուղղակի անոր հետ ոեւէ առնչութիւն չունէր։

Սոկրատ և Սոզոմենոս եկեղեցական պատմիչները կը գովեն Եւստաթիոս Սեբաստացին, իբր հանճարեղ, կարող և գործունեայ, բայց կը պարսաւեն անոր նկարագիրը, իբր ամէն բանի մէջ ծայրայեղ և փոփոխամիտ (հմմտ. Հ. Յովհաննէս վարդ. Թորոսեան, ԲԶՄԳ. 1932, էջ 352)։

Դիտելի է որ Նիկոպոլիս (=Շապին Գարա Հիսար), Սեբաստիա (=Սըվազ), Գերասիա (=Կերասոն), Սատաղիա (=Սատաղ) որոնք հին Առաջին Հայքի եկեղեցական նահանգը կամ մետրոպոլտութիւնը կը կազմէին, Կեսարիոյ կամ Պոնտոսի էքսարքութեան ներքեւ էին և ուղղակի Հռոմի կցուած երկիրներուն մէջ գտնուելով սերտիւ կապուած Կեսարիոյ աթոռին։

Ասոնց կարգին կարելի է դասել նաեւ Առաջին Հայքի պատկանող Կողոնիոյ (=Քէօյլիւ Հիսար) քաղաքին եպիսկոպոսը (տես Թուղթ 195) որուն ուղղուած նամակին մէջ Ս. Բարսեղ կ'ըսէ թէ կը գրէ նաեւ «այլոց եղբարց Փոքուն Հայոց» որով որոշ կը հասկցուի թէ թէեւ այս եպիսկոպոսները կախում ունէին Կեսարիոյ աթոռէն, սակայն տակաւին Հայ կը մնային իրենց հօտին հետ լեզուով և ցեղային նկարագրով։

Եթէ անոնք վաղընչական ժամանակներու հայացեղ բնակիչներն ըլլային շատոնց կորուած պիտի ըլլային իրենց ցեղային նկարագիրը և մանաւանդ լեզուն։ Հետեւաբար կրնանք խորհիլ թէ Փոքր Հայքի մէջ այդքան ստուար թիւի մը հասած Հայերը մօտ ժամանակներու մէջ Եփրատը անցած պէտք է ըլլան և հաւանօրէն Հայաստանի մէջ

(1) Եւստաթիոս նախապէս մտերիմն էր Ս. Բարսեղի։ Երբեմն Բարսեղ ուրիշներու կասկածը անոր ուղղափառութեան վրայ փարատելու համար՝ անկէ կ'առնէ հաւատոյ դաւանութիւն մը որ ցոյց կուտայ ուրիշ եպիսկոպոսներու։ Ասոնք կը յայտնեն թէ մեծ վստահութիւն չունին։ Իր եղբայրը Գրիգոր Նիւսացի նոյնիսկ զինքը մեղադրած է այսպիսի մարդ մը պաշտպանած ըլլալուն համար։ Բարսեղ յետոյ դէմ դարձաւ Եւստաթիոսի երբ տեսաւ թէ Նիկիոյ ժողովին որոշումներուն դէմ ելաւ ան և ուրացաւ Հոգւոյն Սրբոյ աստուածութիւնը։

քրիստոնէական կրօնքին վերջնապէս հաստատուելէն յետոյ աւելի տուալրացած, վասնզի շատ յստակ է թէ քրիստոնէութենէն յետոյ Հայերու դէպի Արեւմուտք տեղափոխութիւնը անհամեմատ աւելի աճած էր։

Նոյնիսկ կրնանք ենթադրել թէ այս եկեղեցականները՝ որոնք իրենց գլուխը ունէին Կեսարիոյ աթոռը, իրենց ստորադաս կղերին հետ մեծ մասամբ պէտք է մարզուած և դաստիարակուած ըլլային Կեսարիոյ մէջ որ էր կեդրոն Կապադովկիոյ Եկեղեցիին։

Նոյնիսկ կարելի է այնքան առաջ երթալ այս ուղղութեամբ որ հաւանական է ենթադրել թէ Փոքր Հայք և Կապադովկիա երբ մէկ վարչութեան ենթարկուեցան իրարու միաւորեալ բնակչութիւն մը ունէին և Հայք անոր մէջ աննշան թիւ չէին ներկայացներ։

Ասոր ապացոյցն էր, յիշատակեալ (վերը էջ 244-5) Շանքահարաց կամ Շանքածից կամ աւելի ճիշդ «Շանքահարեալ» լեգէոնը որուն կեդրոնը Մելետինէ և զօրականներուն մեծամասնութիւնը Փոքր Հայքէն էին (Դիոն Կասիոս, գիրք ԿԱ.) և հետեւաբար Հայ։ Ասոնք ինչպէս Հռոմէական բոլոր բանակները տարիներով նոյն տեղը մնալով, ամուսնութեամբ, վաճառականութեամբ, բարքով, կրօնքով տեղացիներուն խառնուած էին և ձուլուած (Դիոն Կասիոս, գիրք ԿԱ.)։ Իր զինուորները հուժկու լեռնականներ՝ գրեթէ բոլորն ալ տեղացիներ էին և Ապողինարեան ԺԲ. գունդին հետ Հռոմէական արծիւներուն բախտը կը պաշտպանէին Փոքր Ասիոյ մէջ։

Այս գունդին մէջ ուր հետզհետէ քրիստոնէից թիւը աճեցաւ և եղաւ ատեն որ բոլորն ալ քրիստոնեայ էին (Եւսեբիոս, Եկեղ. Պատմ. Ե. գ.) Հայերու գոյութիւնը անժխտելի է։ Ասոնցմէ մէկուն Ս. Պողիկտոսի (Նահատակուած 258ին կամ 259ին), ազնուական հայազգի հարիւրապետի մը անունը, իբր վկայի և Սուրբի, պատմութիւնը մեզի բերած է (Հմմտ. Հ. Վ. Յովհաննէսեան, Սեբաստիոյ քառասուն մանկանց կտակը. ԲԶՄՊ. 1928, էջ 99-100)։ Այս լեգէոնին մէջ հայերու գոյութիւնը ցոյց կու տար թէ այս շրջանակներուն մէջ Հայերը թիւ մը ունէին։

Նոյնպէս, եթէ Հայաստանի վրայ կատարուած արշաւանքներու յիշատակը յաւերժացնելու նպատակով չէ այլ այդ լեգէոնները ստուարացնող զինուորներու ազգութիւնը նկատի առնելով տրուած է «Հայկական» առաջին և երկրորդ կոչումները, — որոնք կը գործածուէին 360 թուականէն առաջ երկու լեգէոններու համար (տես Ամմիան. 20. 6. 1-7. 20. 7. 1. Ասատուրեան, Նոյն, էջ 289)— փաստ մըն է թէ ուղղակի Հռոմի իշխանութեան ենթարկուած Փոքր Հայքի և թերեւս աւելի Արեւմուտք ալ տարածուող երկիրներու մէջ Հայ պատկառելի թուով բնակչութիւն մը գոյութիւն ունէր։

Այս երկիրներէն ամէնէն աւելի Հայկականին և թերեւս ամէնէն աւելի խիտ հայ բնակչութիւն մը ունենալուն պատճառով Փոքր Հայք անունը առած երկրին այս կոչումը Թէոդոսի (379 - 395) օրով գործածութենէ ինկաւ, երբ 390ին Հռոմէական Հայաստանի մէջ Հայոց անկախ իշխանութեան վերջ տրուեցաւ և Comes Armeniae տիտղոսով կուսակալ մը դրուեցաւ, բոլոր Հայկական գաւառներու վրայ, որոնց բնակչութիւնը չեչտեալ հայադրոշմ նկարագիր մը ունէր, շնորհիւ Հայաստանէն այդ տեղերը գաղթող և տեղաւորուող հայերու բազմութեամբ։



Ասոր գեղեցիկ փաստը կու տան անցողակի և սակայն շատ նշանակելի մի քանի պատմական յիշատակութիւններ որոնք մեզի համար թանկագին վաւերագիրներ կը հանդիսանան, ապացուցանելու համար թէ Եփրատէն մինչև Ալիս և աւելի անդին, Կեսարիա և իր շրջակայքը առատօրէն կը պարունակէր Հայեր և Հայ արիւնով տեղացի դարձած բնակիչներ։

Դիոն Կասիոս (տես Ասատուրեան, Հայաստան եւ Հռոմ, էջ 230) կը պատմէ թէ Տրդատ Բ. (218 – 253) երբ Հայոց գահը կը բարձրանայ, Մակրինոս կայսեր (217 – 218) և Արտաւան Դ. Պարթև (209 – 226) արքային միջև կնքուած դաշնադրութեան հետեւանքով, կ'որոշուի ետ դարձնել աւարը զոր Հռոմայեցիք Հայերէն առած էին և միանգամայն բոլոր երկիրները, զորս իր հայրը(1) Կապադովկիոյ մէջ ստացած էր (Նոյն)։

Այս վերջին տեղեկութիւնը եթէ վաւերական է ցոյց կու տայ թէ Արշակունի հարստութեան պատկանող Հայ իշխաններ Կապադովկիոյ մէջ երկիրներ ստացած էին, հետեւաբար հարստութիւն և ստացուածք ունէին և կապեր և յարաբերութիւններ այս երկրին հետ, ուր կ'ապրէին անշուշտ իրենց ծառաները, մշակները, մատակարարները, գործակալները և ներկայացուցիչները։

Կոստանդիանոս Մեծի 315 յուլիս թուականով մէկ օրէնսդրական կարգադրութիւնը (Թէոդոսի օրինագիրք ԺԱ. գիրք Ա. հատուած) ուղղուած «առ համարակալն իւր Եւսեբիոս», հարկերու և տուրքերու մասին արդեօք Կապադովկիոյ և Փոքր Հայոց շրջաններուն համար չէ՞ր։

Հոն կը տեսնուի թէ Հայ արքունական տան պատկանող անձերու մասնաւոր առանձնաշնորհներ կը տրուի, երբ Կայսրը անխտիր հարկատուութեան կ'ենթարկէ իր հպատակները, չեշտելով որ «բացի մերոց զոյից եւ ի կաթողիկէ եկեղեցեաց եւ ի տանէն Եւսեբիայ, բարեաց յիշատակաց արժանւոյ առն եւ կանխագոյն բդեշխի եւ հրամանատարի այրուձիոյն եւ հետեւակաց, եւ ի տանէն Արշակայ, արքային Հայոց, մի ո՛ք օգտեսցէ ի հարկաց եւ ի հանից տէրութեան մերոյ»:

Կոստանդիանոսի ժամանակակից Հայոց Արշակ թագաւորի մը գոյութիւն չունենալը, Դուրեան պատրիարքի (Ազգ, Պատմ. էջ 215 և 239) կասկածիլ կու տայ այս օրէնքին վաւերականութեան մասին և խորհիլ թէ Կոստանդի ժամանակակից Արշակ Բ.ի շնորհուած պէտք է ըլլայ այս ապահարկութիւնը, մանաւանդ որ Զոսիմոս՝ Ե. դարու պատմագիրը (Բ. 51) կը յիշատակէ թէ Կոստանդ բարեկամութիւն ցոյց տուած էր Արշակ Բ.ի, ի մէջ այլոց «Հայոց թագաւորին Հռոմէական սահմանակից երկիրներու մէջ ունեցած կալուածներէն հարկ չպահանջելով» (Ազգ, Պատմ. էջ 239)։

Զոսիմոսի տեղեկութեանց վաւերականութիւնը առանց կասկածի տակ դնելու արդեօք կարելի՞ չէ մտածել թէ Կոստանդիանոս Մեծի ատեն շնորհուած ապահարկութեան հրովարտակին մէջ «ի տանէն Ար-

(1) Տրդատ Բ.ի հայրը ըստ Դուրեանի (Ազգ. Պատմ. էջ 166) և ըստ Բասմաջեանի (Իսկական Պատմ. էջ 196) էր Վաղարշ որ Կարակալլա կայսրը իր մօտ կանչելով բանտարկած էր (217) և 11 ամիս բանտարկութենէ յետոյ մեռած էր (218)։ Հ. Յ. Ասատուրեան (Հայաստան եւ Հռոմ, էջ 227) չի յիշեր անունը այս թագաւորին, միայն կը յիշէ անոր ձերբակալութիւնը։

շակայ արքային Հայոց» բացատրութիւնը կը վերաբերի Արշակունեանց արքայական ընտանիքին, որ ինչպէս տեսնուեցաւ արդէն տակաւին Գ. դարուն սկիզբները, Մակրինոս կայսեր (217 – 218) ատեն Կապադովկիոյ մէջ կալուածներ ունէր։

Մեծն Կոստանդիանոս 315ին, մօտաւորապէս հարիւր տարի յետոյ կրնար զանոնք ապահարկ կացուցանել և մօտաւորապէս քառասուն տարիներ յետոյ Կոստանդ՝ ինչպէս կը վկայէր Զոսիմոս, կրնար կրրկնած և վերահաստատած ըլլալ նախապէս տրուած հրովարտակը։

Ինչ ձեւով ալ մեկնուի, իրողութիւն մը ըլլալէ չի դադրիր Հայոց Թագաւորներուն Կապադովկիոյ մէջ հողային ստացուածքներ ունենալը, և հոն Հայ Արշակունիններու բաւական թուով բնակիլը, կարգ մը առանձնաշնորհներ ալ վայելելով(1)։

Արդէն տեսնուեցաւ թէ հոն կ'ապրէին ուրիշ Հայեր ալ այդ շրջանին, որոնցմէ հասած եկեղեցականներուն յիշատակութիւնը արդէն կատարեցի, թուելով անունները այն եպիսկոպոսներուն որոնք Հայ էին և Պոնտոսի էքսարքութեան և Կեսարիոյ աթոռին ենթակայ վիճակներուն մէջ կը գործէին։ Անոնց բազմութիւնը գրաւական մըն էր թէ այդ շրջանակին մէջ Հայերը որքան շատ էին։ Սակայն հոս Հայոց դիրքին և թիւին կարեւորութիւնը անգամ մըն ալ շեշտելու համար ըսենք թէ նոյնիսկ Կեսարիոյ արքեպիսկոպոսական աթոռին վրայ բազմած են հայեր, ինչպէս Սեբաստիոյ Եւստաթիոս եպիսկոպոսին՝ այս «խուժադուժ Հայ» կոչուած գործունեայ, եռանդուն և աղմըկալից արարքներով նշանաւոր եկեղեցականին՝ հայրը (որուն անունը չենք գիտեր) որ ինչպէս կ'երեւայ շատ խստակրօն եկեղեցական

(1) Այս հրովարտակներուն բուն Հայաստանի հետ վերաբերութիւն չունենալը բացորոշ է։ Հայաստանի մէկ մասը միայն 386ին էր որ Հռոմէական տիրապետութեան կ'ենթարկուէր։ Հռոմէական տէրութեան նոր կցուած Հայաստանին համար դարձեալ բացառութիւն մը կ'ըլլայ, 4 դեկտ. 386 թուականով տրուած օրէնքի մը մէջ (Մատեան օրինաց Թէոդոսի, գիրք ԺԲ. հատած Ջ.) ուր հակառակ անոր որ օրինադրուած էր «յիսներորդ մասն ցորենոյ» «քառասներորդ մասն գարւոյ եւ քսաներորդ մասն գինւոյ եւ ճարպի խոզենւոյ» տալ հարկահաններուն, «դրդեալք ի գթոյ մարդասիրութենէ՝ հրաման տամք զի յաշխարհին Հայոց, վասն բացածից հեռաւորութեանն, քառասներորդ մասն ցորենոյ եւ գարւոյ եւ հինգետասաներորդ մասն գինւոյ եւ ճարպի խոզենւոյ հատուսցի հարկահանաց»:

Թէոդոս կայսրը՝ իր երկու կայսերակիցներուն հետ (Վաղենտիանոս և Արկադիոս) առ Կինեգիոս կուսակալ և Պատրիկ տուած այս հրովարտակով Հայոց համար այս բացառութիւնը կ'ընէ անշուշտ անոնց տակաւին նոր Հռոմի կցուած ըլլալը նկատի ունենալով։ Անշուշտ այս կարգադրութիւնները պիտի փոխուէին, երբ հոն հաստատուէին ամրապէս Հռոմէական բանակները։

Այս հրովարտակը ինքնին ցոյց կուտայ թէ նախընթացները կը պատկանէին ո՛չ թէ Հայաստանի այլ անոր սահմանակից Հռոմէական երկիրներու, որոնց մէջ էր նաև Կապադովկիա, ուր Հռոմէական օրէնքները կը գործադրուէին անխտիր, միայն անձանց եւ ընտանիքներու համար բացառութիւն ըլլալով, մինչ 386ին մասնաւորութիւնը ամբողջ բնակչութեան համար է։



մը եղած է, ինչպէս կը հաստատէ Սոկրատ իր եկեղեցական պատմութեան մէջ։ պատմելով թէ անիկա կարգազուրկ ըրած է իր զաւակը, Եւստաթիոս եպիսկոպոսը «քանզի զգենոյր հանդերձս անպաշտանս քահանայութեան»:

Նոյնպէս Հայ էր ծագումով և Կապադովկիացի Ս. Բարսեղ որուն նախնիքը Հայաստանէն եկած են։ ինչպէս կը յիշեցնէ իրեն Ս. Գրիգոր Նազիանզացին, իրեն ուղղուած նամակի մը մէջ, յունաց իսկ զարմանք պատճառելով, երբ կը յայտնէ թէ իրենց նախնիք Հայաստանէն եկած են և գուցէ Բագրատունեանց ցեղէն են (Հ. Գ. Նահապետեան, Քրիստոնէական ճարտարապետութիւն, պատմական հետազօտութիւններ, ԲԶՄԳ. 1931, էջ 12)։

Այս տեղեկութիւնը մեզի կու տայ թանկագին ծանօթութիւն մը, վասնզի Կ. Պոլսոյ Օրթոտոքս տիեզերական պատրիարքութեան աթոռին վրայ Դ. դարուն կը դնէ Հայ ծագումով և Կապադովկեացի եկեղեցական մը՝ Ս. Գրիգոր Նազիանզացին «Աստուածաբան» (379 – 381) որ ինքն իսկ կը հաստատէ իր և Բարսեղի Հայկական ծագումը։

Երբ այսպէս բարձրագոյն աթոռներու կը տիրանան Հայ ծագումով եկեղեցականներ, որոնք Կապադովկիա ծնած և ապրած են, ասիկա արդէն կը նշանակէ թէ հոն զանգուածներ կ'ապրէին հայութենէ, նոյնիսկ աւելի կանուխ հոն գաղթած և տեղացի դարձած։

Դժբախտաբար յիշատակարաններու ցանցառութիւնը թոյլ չի տար մեծ թուով փաստեր տալու, սակայն պահուած սակաւ վաւերագիրներ բաւական են համոզելու մեզի թէ հասարակ ժողովուրդէն ալ անշուշտ շատ Հայեր պէտք է հաստատուած ըլլան Կապադովկիա, ինչպէս կը հաստատէ տապանաքար մը որ հիմա կը գտնուի Վատիկանեան թանգարանին մէջ և որուն մասին ժամանակին գրած է De Rossi (Inscriptiones Christianae Urbis Romae, Ա. հտ. էջ 155, թ. 355, տես նաև Ալեքսանդր վրդ. Պալճեան, Պատմ. Կաթողիկէ Վարդապետութեան ի Հայս, Վիեննա, 1878, էջ 5 և ԲԶՄՎ. 1933, էջ 199)։

Ահա այդ տապանաքարը իր թարգմանութեամբ։

☧

A Ω

CIVEM ARNENIACVM CAPPADOCEM
NVMINE QVIRILLVS PIVS OMNIBVS
AMICATVS VIXIT ANNOS
P'M' LXX PRAECESSIT AD PACEM
VI ID MART. POST CONSS. RICO
MERE ET CLEARCO DIE LVNAE
BISOMV CVM YPERECHIAM COMPAREM.

**(ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ)**

**Կապադովկիոյ քաղաքացի Հայկազն**
**Կիւրեղ անուն բարեպաշտօն**
**Շուրջ Հ. (= 70) տարի, գնաց ի հանգիստ**
**Վեց ԻԴ. Մարտի (10) յետ հիւպատոսներուն**
**Ռիկոմերէսի եւ Կղէարքոսի, Երկուշաբթի օրը**
**Կանգնեց այս շիրիմը իրեն եւ իր Հիպերիքա կնոջ:**

Ինչպէս կը հաստատուի այս տապանաքարը կը պատկանի Կապադովկիացի Հայ այր և կնոջ մը որոնք մեռած են Հռոմ 385 թուականին։

Հ. Եղիա Փէչիկեան որ այլեւայլ լուսաբանութեամբ հրատարակած է (ԲԶՄՊ. 1933, էջ 199) վերջին անգամ այս տապանաքարը, կ'ըսէ թէ հայազն ամոլը որ անոր տակ թաղուած էր հաւանօրէն Մելետինէէն էր, քանի որ Կապադովկիոյ այս մասն էր զոր Տրայիանոս միացուցած էր երբեմն Փոքր Հայքի (Հմմտ. Պրոկոպ եւայլ)։

Թող ներուի դիտել տալ թէ այս տեսութեան հետ համաձայնիլ կարելի չէ, վասնզի Տրախանոսի կարգադրութիւններէն յետոյ նոր բաժանումներ, որոնք կատարուեցան մասնաւորապէս Դիոկղետիանոսի, և Մեծն Կոստանդիանոսի առեն, (առանց հաշուելու Թէոդոսի օրով կատարուած վարչական բաժանումները որոնք գրեթէ ժամանակակից են տապանաքարին թուականին և հետեւաբար չեն կրնար նկատառութեան առարկայ ըլլալ), չեն թոյլատրեր Մելետինէն հաշուելու իբր մաս Կապադովկիոյ, վասնզի անիկա դուրս կը մնար Առաջին և Երկրորդ Կապադովկիաներէն։ Հետեւաբար ամէն իրաւունք ունինք ենթադրելու թէ բարեպաշտ Կիւրեղ և իր կինը Հիպերիքա իսկական Կապադովկիացիներ էին Հայ։

Պատմութեան էջերն ալ թղթատելով կը հանդիպինք ուրիշներու որոնք նոյնպէս Կապադովկիոյ մէջ ծնած և ապրած են։

Պարոյր Հայկազն կամ Պրոյերեսիոս, որուն վրայ խօսեցայ (էջ 277–8) և որ հաւանօրէն ապրած պիտի ըլլայ 272էն 363 և որ այնքան հռչակաւոր պիտի դառնար, Կոկիսոնցի(1) մըն էր։

Պրոյերեսիոսի Հայ ծագումը պիտի չգիտնայինք եթէ մեզի չ'ըսեր Ս. Գրիգոր Նազիանզացին, (Հ. Գ. Նահապետեան, Քրիստոնէական ճարտարապետութիւն, ԲԶՄՊ. 1931, էջ 12)։

Պրոյերեսիոսի աշակերտած են ո՛չ միայն Կապադովկեան Եկեղեցւոյ այլ քրիստոնեայ աշխարհին երկու մեծ դէմքերը՝ Ս. Բարսեղ և Ս. Գրիգոր Նազիանզացի, որոնք նոյնպէս ծագումով հայ էին, ինչպէս իրենք իսկ կը յայտնէին։

Ս. Բարսեղի վրայ խօսուած առեն ըսի թէ այս մեծ հայրապետը կը պատկանէր երկրին ամէնէն ծանօթ ընտանիքներէն մէկուն որ բազմաթիւ սուրբերու ծնունդ տուած էր (տես էջ 258)։ Ինչպէս որոշ կ'երեւայ այս ընտանիքը Հայաստանէն Կապադովկիա գաղթած էր անշուշտ բաւական առաջ, տարիներու ընթացքին կարենալ գրաւելու համար հոն առաջնակարգ դիրք մը։

Յիշեցի արդէն թէ Գրիգոր Նազիանզացի և Ս. Բարսեղ՝ երբ Պարոյր Հայկազնի կ'աշակերտէին իրենց աշակերտակից ունէին Հայեր, որոնց համար վստահութեամբ կրնանք ըսել թէ մեծ մասամբ Փոքր Հայքի և Կապադովկիոյ Հայերէն էին, որոնք Կեսարիա ալ իրենց աշակերտակից եղած էին (տես վերը, էջ 272)։

Լիբանիոս, որ ժամանակակից էր Յուլիանոսի (361–363) և գրեթէ ժամանակով քիչ կրտսեր Պարոյր Հայկազնէն, մեծ գովեստով յիշած է

(1) Կոկիսոն (=Կէօքսուն) կը գտնուէր Հաճընի և Զէյթունի հիւսիսակողմը, և էր Կապադովկիոյ Կոմանայի մերձաւոր քաղաքը։ Կոկիսոն կը նկատուէր նաեւ մասն Ծոփաց աշխարհին։



հայազգի հռետորը, որուն պէս ինքն ալ Հայ աշակերտներ կը հասցընէր մեծ թուով։

Ասոնք նոյնպէս Հռոմէական տիրապետութեան ենթարկուած հայկական աշխարհներէն պէտք էին ըլլալ մեծ մասամբ։

Կապադովկիան հայերով լեցուն ըլլալուն մէկ ուրիշ փաստն ալ կուտայ Ստեփաննոս Ուլնեցիի վկայաբանութիւնը, որուն վաւերականութեան վրայ չեմ կրնար պնդել դժբախտաբար։

Ստեփաննոս Ուլնեցի Փոքր Հայոց Կոկիսոն քաղաքը կը բնակէր, և 25 տարեկան եռանդուն Հայ երիտասարդ մըն էր, որ Յուլիանոս Ուրացողի առեն երբ հալածանքը կ'սկսի քրիստոնէից դէմ իր ծնողքը և ազգականները հաւաքելով մերձակայ լեռները կ'ապաստանի։ Հայրը՝ Ղազարոս, այնտեղ կը վախճանի, և մնացեալներուն թաքստոցը հովիւի մը միջոցով կը յայտնուի։

Ասոնք ձերբակալուելով կը տարուին Կանչի բերդը (=Զուքուրհիսար, Ֆռնուզի մօտ), Սոկրատէս դատաւորին առջեւ, որ սպառնալիքով և տանջանքներով կը փորձէ անոնց հաստատամտութիւնը, բայց ամէնքն ալ անդրդուելի մնալով կը նահատակուին։ Նախ Բագարատ պատանին տանջանքներու տակ կը մեռնի, յետոյ Ստեփաննոսի մայրը Մարիամ և եօթը կոյս աղջիկներ առանձին կը գլխատուին, ինչպէս նաեւ Գրիգորիոս Կոկիսոնցի՝ Սմբատ ու Յովհաննէս զաւակներովը, Ղեւոնդ ծերունին՝ Դաւիթ ու Ստեփան ու Թադէոս զաւակներովը, Սիմէոն Կեսարացի, Վեղառիոս, Բասիլիոս, Սոմնաս, ուրիշ ծերունի մը չորս զաւակներով, և այլեւս ութը անձեր, որոնց մէջ և կիներ, և ամէնէն վերջը Ստեփաննոս։

Նահատակութեան թուականն է 362 օգոստոս 18 և վայրը՝ Կանչի, ուր մինչեւ վերջերը կը պատուուէին նահատակներու գերեզմանները (Տես Օրմանեան, Ազգապատում, էջ 187–188. Յայսմաւուրք, Կ. Պոլիս, տպ. 1730, էջ 20 և Աւգէրեան, Լիակատար վարք եւ վկայութիւնք սրբոց, Վենետիկ, 1810–15, Ե. հտ. 89. Տաշեան, Մայր ցուցակ, էջ 26. Ալիշան, Սիսուան, էջ 184)։

Այս վկայաբանութիւնը ուրեմն կը հաստատէ թէ այդ ժամանակամիջոցին Ուլնիա կամ Զէյթուն, երբեմն Յուլիուպոլիս քաղաքը, նոյնիսկ հայաբնակ դառնալ սկսած էր։

Կոկիսոն՝ Պարոյր Հայկազնի հայրենիքը, անգամ մըն ալ կը հաստատուի թէ Հայ բնակիչներ ունէր։

Իրեն հետ նահատակուող, և նոյն շրջաններուն մէջ ապրող յիշատակեալ անձերուն ոմանց անունները, ինչպէս Բագարատը և Սմբատը ցոյց կուտան թէ անոնք ալ Հայեր էին եթէ միւսները Հայեր չէին, թէեւ իբր մերձաւորներ իրեն, իրաւունք ունինք զանոնք ալ մեծ մասամբ Հայեր ենթադրելու։

Հետեւաբար շատ մը պատճառներ և զօրաւոր և թելադրական շարժառիթներ ունինք ենթադրելու թէ Եփրատէն անդին տարածուող երկիրներու մէջ Հայերը մեծ թուով կ'ապրէին և Հայաստանէն աւելի կամ պակաս թուով Հայեր նոյնիսկ Հռոմէական տիրապետութեան սկիզբէն գաղթած էին այդ երկիրները՝ առաւելապէս Կապադովկիա, որուն հետ աւելի սերտօրէն կապուած էր Հայաստան թէ՛ իբր մերձաւոր դրացի և թէ՛ իբր քրիստոնէութեան օրրան մը։

Դժբաղդաբար այդ գաղթականները սոսկ մեծամասնութեամբ ձուլուած են շրջանակի տեղացիներու հետ և ընկլուզուած՝ Հռոմէական քաղաքակրթութեամբ, վասնզի քրիստոնէական եղբայրացման շնորհիւ ազգութեան գաղափարը արժէք մը ներկայացնելէ հեռու էր, և քրիստոնէական անխտրականութիւնը ազգերը իրարու քով կը բերէր և իրարու կը ձուլէր, միակ կրօնքի մը հովանիին տակ։

Հետեւաբար ազգային [Ինքնուրոյն] կազմակերպութիւն և սեպական կեանքի մը հետքերը որոնել իսկ աւելորդ պիտի ըլլար այդ շրջանին համար, ուր ամէն բանէ վեր էր կրօնին ըմբռնումը, որով իրարու կապուած կը գործէին ժողովուրդները՝ առանց իրենց ցեղային ծագումին ամենադոյզն կարեւորութիւն մը տալու։

Քրիստոնէութիւնը հիմնովին կերպարանափոխ կ'ընէր ազգերու նկարագիրը և մի՛ հոտ և մի՛ հովիւ կազմելու իղձը՝ որ քրիստոնէութեամբ կը ներմուծուէր իրարու բնակակից ժողովուրդներու մէջ, շատ մը ցեղերու պատկանող անհատներ կը ձուլէր իբր հալոցի մը մէջ անզգալաբար և առանց անդրադառնալու։

Այդ երեւոյթը առաւելապէս կը տեսնուէր նաեւ Փոքր Ասիոյ մէջ ուր երբեմն ապրող բազմաթիւ ազգերը և ցեղերը, շնորհիւ քրիստոնէական կրօնքին և Հռոմէական քաղաքակրթութեան ձուլուեցան և միաւորուեցան և կորսնցուցին իրենց սեփական ազգութեան դրոշմը, պատմական անցեալ յիշատակներու վերածելու ճամբուն մէջ դնելով անունները այն բազմաթիւ ազգերուն որոնք երբեմն ապրած էին Փոքր Ասիոյ թերակղզիին վրայ, սեփական և առանձնայատուկ կեանքով մը, առանձին իշխանութիւններով, իրենց քաղաքական ու ցեղային տիրապետութեան ենթարկուած յատուկ երկիրներով ու վարչութեամբ, որոնց վերջ տալէ յետոյ Հռոմ իր տիրապետութեամբ՝ քրիստոնէութիւնը կու գար անոնց ցեղային ինքնուրոյն դրոշմն ալ ջնջել։

Այլեւս ո՛չ Բիւթանիա և ո՛չ Բիւթանացի, ո՛չ Պափլագոնիա և ո՛չ Պափլագոնացի, ո՛չ Փռիւգիա և ո՛չ Փռիւգացի, ո՛չ Միւսիա և ո՛չ Միւսացի, ո՛չ Լիւդիա և ո՛չ Լիւդացի, ո՛չ Կարիա և ո՛չ Կարիացի, և ո՛չ Լիւկիա և ո՛չ Լիւկիացի, ո՛չ Պիսիդիա և ո՛չ Պիսիդացի, ո՛չ Պամփիւլիա և ո՛չ Պամփիւլիացի, ո՛չ Գաղատիա և ո՛չ Գաղատացի և այլ, պիտի մնար։

Կապադովկիան և Կապադովկացին չէին կրնար բացառութիւն կազմել դրացի Պոնտոսի, Փոքր Հայքի և մերձաւոր երկիրներուն հետ, որոնք այնքան մեծ թուով Հայեր կը պարունակէին, իբր գաղթական կամ բնիկ և իրենք ալ այդ ընդհանուր հալոցին մէջ ընկլուզուիլ սկսան, թէեւ իբր Մայր-Հայրենիքէն նորանոր պատուաստներ և նոր արիւն ստացող զանգուածներ, իրենց ձուլումը շատ հեշտին չեղաւ, և երկար ատենի կարօտեցաւ անոնց անհետացումը։



Ժ.

# ԿԱՊԱԴՈՎԿԻԱ

# ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԱՍ

**( 395 — 1067 )**

## Ա.

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆՑՔԵՐ

Արեւելեան բաժինը Հռոմէական կայսրութեան, որ վիճակեցաւ Մեծն Թէոդոսի՝ Արկադէոս որդիին, կը բաղկանար գլխաւորաբար Պալքանեան և Փոքր Ասիոյ թերակղզիներէն, Հայաստանէն, Սուրիայէն և Եգիպտոսէն։

Նախկին հմայքը և զօրութիւնը չունէր այլեւս Հռոմէական մեծ կայսրութիւնը որուն նկարագիրը շնորհիւ քրիստոնէութեան հիմնական կերպարանափոխութիւն մը կրելու վրայ էր, վասնզի ընկերային այն մեծ յեղաշրջումը որ նոր կրօնքը պիտի կատարէր, միայն կրնար իրագործուիլ անոր բարձր ոգիին ըմբռնումով և հեթանոսական աւանդութիւններու, սովորութիւններու և բարքերու անհետացումով, ինչ որ ժամանակի կը կարօտէր։ Քրիստոնէութիւնը տակաւին իր վերջնական յաղթանակին չէր հասած վասնզի դեռ հեթանոսութիւնը կը տոկար, հակառակ այն մեծ ճիգերուն որ պետութիւնը կը գործադրէր զայն բնաջնջելու համար։

Արեւելք՝ այդ խորհուրդներու և տեսիլներու երկիրը՝ Քրիստոնեայ Եկեղեցիին կու տար իր մեծ միտքերը որոնք կրօնական ու մանաւանդ բարոյական նոր կեանք մը կը կերտէին։ Այսպէս պետութիւնը նոր ընկերութեան մը վրայ հիմնուած ներքնապէս կը յեղաշրջուէր։ Միեւնոյն ատեն Հռոմէական պետութեան սահմաններէն դուրս կը նշմարուէր ձգտում մը բարբարոս ժողովուրդներու մէջ, դէպի քաղաքակիրթ երկիրներ՝ մասնաւորապէս Հռոմէականը՝ խուժելու։ Այս շարժումը կ'ունենայ ոչ նուազ նշանակելի հետեւանքներ, վասնզի Արեւմտեան Հռոմէական կայսրութիւնը կարճ ժամանակի մէջ կ'ընկճուի այս բարբարոսներու խուժումէն, մինչդեռ Արեւելեանը կը տոկայ երկար ատեն, օր մը սակայն ինքն ալ ընկճուելու համար։

Մօտաւորապէս հազար տարիներու ժամանակամիջոցը ուր Արեւելեան Հռոմէական կայսրութիւնը կը մաքառէր բարբարոսներու դէմ, զէնքով պաշտպանելով Հռոմէական բարձր մշակոյթը, միայն կը բաւէր իր փառքը կազմելու, վասնզի անով ան կը մատուցանէր անգին ծառայութիւն մը մարդկային քաղաքակրթութեան։ Կապադովկիա իբր մաս այս պետութեան մասնաւորապէս իր տուած ընտիր զին-

ուրներով այս հազարամեայ պայքարին բերած է իր թանկագին աջակցութիւնը, և սուրով գրաւած՝ ուշագրաւ տեղ մը։

Երբ Հռոմէական կայսրութիւնը երկուքի բաժնուեցաւ, Կապադովկիա՝ Արեւելեան կայսրութեան մէջ կը գրաւէր կեդրոնական դիրք մը և շատ հեռու էր կայսրութեան սահմանագլուխներէն, և հետեւաբար բարբարոսներէն անմիջականօրէն ոտնակոխ ըլլալու վտանգէն, սակայն կարճ ժամանակ յետոյ անիկա դարձաւ սահմանագլուխի նահանգ մը և վտանգի տակ երկիր մը և սկսաւ իր անկումը։

Հետեւաբար Բիւզանդական կայսրութեան տեւողութեան Կապադովկիա ունեցաւ բարձրացման և անկման շրջաններ։

Հազիւ թէ Հռոմէական կայսրութեան բաժանումը տեղի ունեցած և Արկադէոս կայսրը (395–408) իր աթոռը Բիւզանդիոն հաստատած էր, երբ Հոները ծորայ պահակէն անցնելով խուժեցին Հայաստան և զայն ոտնակոխ ընելէ յետոյ մտան Կապադովկիա, Կիլիկիա, Սուրիա և Անտիոքի պարիսպներուն տակ կանգ առին։

Այս բարբարոս ժողովուրդը այսպէս անարգել առաջացաւ վասնզի ամբողջ արեւելքի զօրքերը քաշուած էին Թէոդոս Մեծի իր գահակիցին՝ Եւգինիոսի դէմ մղած պատերազմներուն պատճառով (Հ. Գելցեր, Համառօտութիւն Բիւզանդական կայսրների պատմութեան(1), Թրգ. Մեսրոպ Վրդ. Տէր Մովսէսեան, 1901, Վաղարշապատ. էջ 9)։

Հոները, որոնք իբր թէ Ռուփինոս հրաւիրած էր ինքզինքն անհրաժեշտ դարձնելու և ստիպելու համար՝ Արկադէոս կայսրը որ իրեն հետ բաժնէ իշխանութիւնը, ամբողջ տարի մը, բոլոր գիւղերը աւերելէ և անպաշտպան և բաց քաղաքներու մեծ մասը կործանելէ յետոյ, առանց նեղուելու վերադարձան տանելով իրենց հետ գերիներու անհաշուելի բազմութիւն մը։

Այս բարբարոսներուն մեկնումէն յետոյ Արկադէոս կայսր օրէնք մը հրատարակեց որ կը հարկադրէր բոլոր քաղաքները շրջապատել պարիսպներով (տես Lebeau, Histoire du Bas Empire, հատոր Ե. էջ 102, 131. Asie Mineure, էջ 491)։

Այս տեսակ արշաւանքի մը կը հանդիպինք նաեւ Թէոդոս Բ.ի (408–450) ատեն, երբ դարձեալ կովկասեան ժողովուրդ մը՝ խաշնարած Ցանն ցեղը (Sannes կամ Tzannes)(2) կը մտնէ Պոնտոս, Հայաստան և Կապադովկիա և կ'աւերէ այս երկիրները (Lebeau, նոյն, հատոր Զ. էջ 129, 132) — Asie Mineure, էջ 493)։

Բարբարոսներու այս արշաւանքէն զատ երկիրը կ'ունենայ նաեւ մեծ ցնցում մը 453ին սոսկալի ժանտախտի համաճարակի մը և թերեւս անոր հետեւանք սովի մը պատճառով որ Կապադովկիան կ'ենթարկէ մեծ տագնապի։

(1) H. Gelzer, Abriss des Byzantinischen Kaisergeschichte գործը յաւելուածն է Karl Krumbacherի Geschichte des Byzantinischen Litteratur= Բիւզանդական Մատենագրութեան Պատմութիւն (München, 1897) անուն մեծ գործին և կը գրաւէ անոր 911–1067 էջերը։ Մեսրոպ եպ. Տ. Մովսէսեան միայն այս մասը առանձին հատորով մը թարգմանած է։ Յաճախ առիթ պիտի ունենամ յիշելու այս գործը միայն նշանակելով հեղինակին անունը «Գելցեր»։

(2) Պլինիոս կը յիշատակէ Sanneները։ Sanoi, Czani ձեւով ալ յիշուած։



505ին Ցանները և 515ին Հոները դարձեալ Բիւզանդական պետութիւնը կ'զբաղեցնէին։

515ին Հոները Կովկասէն անցնելով մտան Բիւզանդական կայսրութեան երկիրները, կողոպտեցին Հայաստանը, Կապադովկիան, Պոնտոսը, Գաղատիան և առաջացան մինչեւ Լիկաւոնիայի սահմանները, մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը։ Յոյները ամէն ինչ ընել ջանացին, անոնց մեկնելէն յետոյ, Կապադովկիոյ քաղաքները ամրացնելու համար, որպէսզի ի վիճակի ըլլան դիմադրելու նոր արշաւանքի մը պարագային։

Ասկէ յետոյ երկար շրջան մը, մինչեւ Զ. դարուն վերջը, մինչեւ Մօրիկ Հայկազնի (582-602) իշխանութեան վախճանը, Կապադովկիան հանդարտ էր հակառակ պատերազմին որ կը շարունակուէր ամէն սահմանագլուխներուն վրայ, Միջագետք, Սուրիա, Հայաստան և Լազիստան։

Մեծն Յուստինիանոս (557-565), որ խանդավառուած հին Հռոմէական կայսրութիւնը վերակազմելու գաղափարով Բիւզանդական կայսրութեան պիտի տար իր ամենամեծ ծաւալը և ամէնէն մեծ փառքը, իր իշխանութեան բովանդակ տեւողութեան, աննկուն կորովով մը մղեց պատերազմներ, որոնք թէեւ յաջողութեամբ պսակուեցան և իր անունը փառաւորեցին սակայն տկարացուցին պետութիւնը, որուն զինուորական և տնտեսական ոյժերէն վեր էին այն ճիգերը որ այս կայսրը կը կատարէր Հռոմի տիեզերական կայսրութիւնը վերստեղծելու համար։ Այս պատերազմները որոնք մղուեցան գլխաւորաբար օտար վարձկան զինուորներով տնտեսական խոշոր հետեւանքներ ունեցան և թերեւս աւելի աղետաբեր ըլլային եթէ Յուստինիանոս իր գանձին ղեկավար չ'ունենար անձնապահ զինուորներու զօրապետ (praefectus praetorio) Յովհաննէս Կապադովկացին որ տնտեսական գործերու մէջ արտակարգ հանճար մըն էր։ Հակառակ անոր խորհուրդներուն Յուստինիանոս չվարանեցաւ դէպի Իտալիա, դէպի Կարքեդոն, դէպի Եգիպտոս, դէպի Սիկիլիա կազմակերպել բազմածախս և խոշոր արշաւանքներ։

Մասնաւորապէս պարսկական պատերազմները որոնք անընդհատ կը շարունակուէին, աւելի քան հարկադրական կը դարձնէին նոր ներխուժումի մը դէմ պաշտպանուելու համար՝ Արկադէոս և Անաստաս կայսրերու կողմէ հրամայուած քաղաքներու ամրացումը գործադրել։ Մեծն Յուստինիանոս կայսրը (527–565) որ պարսկական պատերազմներու պատճառով ստիպուած էր յաճախ Կապադովկիոյ և Հայաստանի սահմանագլուխները գտնուիլ, ուրիշ ոեւէ կայսրէ մը աւելի խնամք ցոյց տուաւ այս վտանգեալ աշխարհները ամուր բերդերով ապահովելու։

Այս առթիւ է որ կը շինուին Կեսարիոյ պարիսպները (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212)։

Սակայն Յուստինիանոսի բոլոր նախահոգութիւնները բաւական չեղան Բիւզանդական պետութեան արեւելեան սահմանները անբռնաբարելի դարձնելու և Կեսարիան իր շրջականերով զերծ պահելու նոր հարուածներէ։ Նոյնիսկ իր օրով պարսիկները 569ին Հայաստանը

*գրաւելէ յետոյ կը ջանան գրաւել նաև Կեսարիան, սակայն Կապադովկիացիք զանոնք պարտութեան կը մատնեն և ամօթով կը դարձընեն (տես)* Յովհաննէս Եփեսացի, Եկեղեցական Պատմութիւն, *ԲԶՄԳ.* 1934, *էջ* 56–57)։ *Իսկ իր յաջորդին՝ Յուստինոս Բ.ի ատեն* (565-578) 575*ին սասանեան Խոսրով Ա. Անուշիրվան* (531–579) *Հայաստանի ճամբով կը մտնէ Կապադովկիա և կ'այրէ Սեբաստիան և Մելետինէն (Հ. Գելցեր, էջ* 100)։

576*ին պարսիկները կը նահանջեն և յաջորդ տարիներուն պատերազմը կը մղուի Հայաստանի մէջ՝ հեռու Կապադովկիայէն։*

*Մորիկ Հայկազնի* (582-602) *ատեն պարսիկներուն թագաւորը Դարան գրաւելէն յետոյ Հայաստանի տիրեց և կ'ուզէր իր սահմանագլուխը հաստատել Թէոդոսուպոլիսէն Կեսարիա և Կապադովկիա (հմմ.* Յովհաննէս Եփեսացի, *ԲԶՄԳ.* 1934, *էջ* 211), *սակայն հալածուած Հռոմներու բանակէն դարձաւ հիւսիսային լեռներուն կողմը, դէպի Կապադովկիա, և ուզեց գրաւել Կեսարիան։ Սակայն Մորիկի բանակները զինքն կանխեցին և անոր ճամբան կտրեցին և սպասեցին Կապադովկիոյ լեռներուն մէջ, ուրկէ անցնելու թոյլ չտուին։ Պարսիկ և յոյն բանակները երկար ատեն իրարու դէմ կեցան և ի վերջոյ պարսիկները պատկառելով յոյն բանակին ուժէն հրաժարեցան Կեսարիան գրաւելու ծրագիրէն և գացին Սեբաստիա և զայն այրեցին, մինչ բնակիչները փախած էին։ Սակայն հասաւ յոյն բանակը և մեծ ջարդ մը տուաւ անոնց (Նոյն, էջ* 211–212)։ *Պարսիկները այրեցին նաև Մելետինէն (Նոյն, էջ* 213)։

*Վերջապէս Մորիկ յաջողեցաւ խաղաղութիւն հաստատել, պարսից հետ Հայաստանը բաժնելու պայմանով։*

*Սակայն երբ Փոկաս* (602-610) *գահը յափշտակեց և Մորիկը սպաննեց, պարսիկները կռիւը վերսկսան։ Այդ պատերազմի միջոցին* (608) *պարսիկները Հռոմէական Հայաստանի տիրեցին և անկէ մտան Փոքր Ասիա, և գրեթէ ամէն տարի ամառը կը փորձէին Փոքր Ասիա արշաւել։* 609*ին երկար ատեն անառիկ նկատուած Եդեսիան գրաւելէ յետոյ բնաջնջեցին երկու հռոմէական բանակներ և անարգել առաջացան Կապադովկիա, ուրկէ անցան Փոքր Ասիա և ամբողջ թերակղզին կողոպտելով հասան մինչև Քաղկեդոն, մայրաքաղաքին հանդիպակաց եզերքը* (Asie Mineure, *էջ* 497)։ *Իր յաջորդին Հերակլի* (610-641) *իշխանութեան երկրորդ տարին* (611) *իսկ Կապադովկիա կրկին տագնապի մատնուեցաւ, վասնզի պարսիկները անցան Եփրատը և գրաւեցին Անտիոքը, Ապամէան, Էմեսան և Կապադովկեան Կեսարիան (Հ. Գելցեր, էջ* 112)։

*Կապադովկիոյ կառավարիչ* Crispus, *Փոկասի փեսան, որ թոյլ տուած էր կողոպտելու նոյնիսկ նահանգին մայրաքաղաքը՝ Կեսարիան, առանց ոեւէ դիմադրութիւն փորձելով, պաշտօնանկ եղաւ և անոր տեղը դրուեցաւ կայսեր եղբայրը Թէոդորը* (Lebeau, *նոյն, հտ. ԺԱ. էջ* 46, Asie Mineure, *էջ* 497)։ *Սակայն պարսիկները Փոքր Ասիոյ մէջ աւելի առաջացան և* 619*ին տիրեցին Անկիւրիային և իշխել սկսան հաղորդակցութեան այն բոլոր գիծերուն որոնք մայրաքաղաքը կը միացնէին Ասորիքի և Ասիայի հետ (Հ. Գելցեր, էջ* 113)։ *Երբ* 622*ին կայսրը սուրբ պատերազմի ձեռնարկեց և գերագոյն ճիգով մը վանել փորձեց պարսիկները, ամբողջ տարի մը Կապադովկիա անցուց, վերակազմելու և կարգաւորելու համար իր զօրքերը, և անկէ յետոյ է որ առաջացաւ դէպի Հայաստան կրօնական պատերազմը շարունակելու համար* (Asie Mineure, *էջ* 497), *Կապադովկիոյ մէջ իր եղբօրը Թէոդորի հրամանին տակ բանակ մը ձգելով* (Asie Mineure, *էջ* 497)։



*Հերակլ օրհասական պետութիւնը փրկեց* 627 *Դեկտ.* 12*ի Նինուէի վճռական ճակատամարտով՝ պարսկական ոյժը խորտակելով և* 628*ին հարկադրելով խնդրել խաղաղութիւն, յանձն առնելով հեռանալ Հռոմէական նահանգներէն, սակայն անոնց տեղը եկան բռնել արաբները որոնք յանկարծական կերպով պատմութեան ասպարէզ ելան, ամբողջ Արեւելքի համար ճակատագրական դեր մը կատարելու համար։*

*Արաբական առաջին յարձակումները արհամարանքով դիտուեցան Բիւզանդական պետութեան կեդրոնին մէջ։ Բայց երբ* 634*ին Բոսդրան, Հռոմէական Արաբիոյ նահանգին գլխաւոր քաղաքը, իսլամներու ձեռքն ինկաւ, Հերակլ անձամբ հարկ դատեց երթալ Անտիոք։ Անհաւատալի յաջողութեամբ մը արաբները կ'առաջանային դէպի Դամասկոս և Բիւզանդական ամբողջ արեւելքը՝ Անտիոքն ալ մէջը ըլլալով կ'իյնար անոնց իշխանութեան տակ։*

*Երբ Հերակլ մեռաւ* (641 *փետր.* 11) *իր հոյակապ գործը անակնկալ կերպով փճացած էր և Բիւզանդական կայսրութիւնը Ասիոյ մէջ միայն Փոքր Ասիան ունէր իր տիրապետութեան տակ։ Այն կորուստը որ արաբները կատարած էին, նկատուած է օգտակար Բիւզանդական պետութեան համար, վասնզի անկէ կը բաժնուէին նահանգներ՝ որոնց միաբնակ բնակչութիւնը ատելութեամբ լեցուած էր երկաբնակ կամ քաղքեդոնիկ դաւանութեան դէմ և ունէր իր սեփական լեզուն, և չէր ձուլուած Բիւզանդականութեան մէջ՝ ո՛չ կրօնքով և ո՛չ լեզուով։ Մինչ ինչ որ կը մնար Բիւզանդիոնի իշխանութեան տակ, հիմա բացարձակ լեզուով և կրօնքով հաւատարիմ զանգուած մըն էր կայսրութեան (Հմմտ. Գելցեր, էջ* 126)։

*Անկէ զատ Հերակլի և իր յաջորդներուն պատերազմական ձախողումները և սպառնացող վտանգը Բիւզանդիոնը հարկադրեցին անդրադառնալու զինուորական վերակազմութեան վրայ, որուն նախաքայլերը արդէն առած էին Յուստինիանոս և իր յաջորդները, փոխելով Դիոկղետիանոսի հին զինուորական և քաղաքային կազմակերպութիւնը, կառավարութիւնը ամփոփելով զինուորական պետերու ձեռքը։ Այսպէս պետութիւնը բաժնուեցաւ մի քանի զինուորական հրամանատարութեանց՝* թեմերու *(Գելցեր, Նոյն)։ Բանակներու այս կարգաւորութեամբ էր որ Կոստանս կայսրը* (641–668) *կրցաւ կասեցնել արաբական յաջող առաջխաղացքը որ Մուաւիյէ Ասորիքի եռանդուն հրամանատարը կը կատարէր դէպի Բիւզանդական երկիրները։ Ան կը գրաւէ* 648*ին Կիպրոս կղզին և միեւնոյն ատեն իր տեղակալներէն մին կ'անցնի Ամանոս լեռը, և կ'արշաւէ Կիլիկիա և Իսաւրիա և կ'առնէ* 5000 *գերի* (Lebeau, *հտ. ԺԱ.* 339, 360). *իսկ* 651*ին Հայաստան կը կոչուի Թէոդորոս Ռշտունի՝ երկրին բնիկ իշխանին կողմէ որ զզուած յունաց կեղեքումներէն անոնց թշնամի դարձած էր (տես* Ազգապատում, *էջ* 722)։

*Այս առթիւ Մուաւիյէ Կապադովկիա կը մտնէ զայն ճեղքելու համար և կը պաշարէ Կեսարիան որ ինքզինքը կը դնէ վճարելով փրկանք* (Lebeau. *հտ. ԺԱ. էջ* 352, Asie Mineure, *էջ* 499)։ *Հակառակ*

անոր որ Մուավիյէ մինչեւ Բիւզանդիոն առաջացաւ (655), ներքին խռովութիւններ ստիպեցին այս կարող զինուորական պետը որ ո՛չ միայն խաղաղութիւն կնքէ այլ մինչեւ անգամ Բիւզանդական կայսրութեան հարկ վճարէ (Հ. Գելցէր, էջ 128)։ Սակայն 663ին թշնամութիւնները նորէն սկսան։ Ամէն տարի արաբները կը խուժէին Փոքր Ասիա և կողոպուտներ և աւարառութիւններ ընելով կը մեկնէին։

Ասոնք մինչեւ մայրաքաղաք իսկ կ՚առաջանային — ինչպէս 668ին և 673ին — և յոյները գերագոյն ճիգերով կրնային պաշտպանել իրենց մայրաքաղաքը արաբներու դէմ։

677ին կնքուած երեսնամեայ դաշինքը կը պարգեւէր խաղաղութեան բաւական երկար շրջան մը, որուն յարգը չգիտցաւ սակայն Յուստինիան կայսրը (685–695 և 705–711), առանց հիմնական պատճառի խզելով զայն 690ին։

Այս պատճառով Դամասկոսի Ումմեան Ապտիւլ Մելիք իպն Մըրվան խալիֆային (685–705) բանակները 690ին (Հիճրէթի 71ին) Կեսարիան պահ մը գրաւեցին (Քէմալէտտին, էջ 231, նաեւ Խալիլ Էտհէմ, Գայսէրի Շէհրի):

Այս ձախող քայլը պատճառ եղաւ որ 692ին Կիլիկեան Սեբաստոպոլսոյ մօտ ծանր պարտութիւն մը կրէ Յուստինիան և Հայաստան ամբողջութեամբ անցնի արաբներուն և Կապադովկիա վտանգի ենթարկուի (Հ. Գելցեր, էջ 141) և քիչ յետոյ արաբները տեղաւորուին Կիլիկիոյ մէջ (նոյն էջ 144) և սպառնան Փոքր Ասիոյ, ուր ազատօրէն կ՚արշաւէին։

Անգամ մը միայն արաբներու բանակներէն մին ձախողուած մը ունեցաւ ՚ի Կապադովկիա (709), բայց այս պարտութիւնը չարգիլեց զանոնք որ նոյնիսկ այդ տարին պաշարեն Տիանան։ Յուստինիան իզուր փորձեց օգնութեան հասնիլ պաշարուած քաղաքին, որ 709ին, դաշնագրութեամբ ինկաւ արաբներու ձեռքը։

Այս հարուստ և բազմամարդ քաղաքը որ մայրաքաղաքն էր Երկրորդ Կապադովկիոյ, լքուեցաւ և պահեց միայն իր անունը և իր եպիսկոպոսները (Lebeau, հատ. ԺԲ. էջ 66–68)։ Բոլոր Կապադովկիան աւերուեցաւ։ Բարբարոսները այնքան վստահութիւն ունէին ինքզինքնուն վրայ և այնքան արհամարհանք՝ Հռոմէացւոց նկատմամբ որ 30 արաբներու խումբ մը յանդգնեցաւ ճեղքել բոլոր Փոքր Ասիան և առաջանալ մինչեւ Քրիսուպոլիս (=Սկիւտար) Կ. Պոլսոյ դէմը, սպաննեց բնակիչները, կրակի տուաւ նաւահանգիստին մէջ գտնուող նաւերը և դարձաւ միացաւ բանակին մեծամասնութեան, առանց նեղուելու (Lebeau, հատ. ԺԲ. էջ 72 — Asie Mineure, էջ 501)։



ԱՊՏԻՒԼ ՄԵԼԻՔԻ ԴՐԱՄԸ

Բիւզանդական կայսրութեան հմայքը և հեղինակութիւնը անչքացած էր և Արաբները հետզհետէ կ՚առաջանային դէպի պետութեան սիրտը, և քանի մը անգամներ նորէն կը պաշարէին մայրաքաղաքը, որուն դէմ մղուած ահարկու յարձակողականի մը Լեւոն Իսաւրացի կայսրը (717–741) հերոսական քաջութեամբ կռուելով յաղթեց և վանեց։

Սակայն իր իշխանութեան բոլոր տեւողութեան արաբները ան-



ընդհատ շարունակեցին իրենց յարձակումները պարբերաբար Փոքր Ասիոյ վրայ, բայց այլեւս տէրութեան համար լուրջ տագնապ պատճառելէ հեռու էին։

Այս շարունակական յարձակումներէն մէկուն մէջ որ 726ին (հիճրէթի 108ին) տեղի ունեցաւ, արաբները Միւսլիմէ Պին Ապտիւլ Մելեքի հրամանատարութեամբ պաշարեցին Կապադովկիոյ մէջ Կեսարիան և Նէոկեսարիան, և զանոնք անձնատուութեան հարկադրելէ յետոյ ծախեցին անոնց բոլոր բնակիչները իբր գերի (Lebeau, հատ. ԺԲ. էջ 130 և Խալիլ Էտհէմ, Գայսէրի Շէհրի, յառաջաբան)։

Սակայն դարձեալ չեն կրցած հոն վերջնականապէս մնալ։

Այսպէս երեք տարի յետոյ, 729ին (հիճ. 111ին) Սայիտ պին Հաշամ և 732ին (հիճ. 114ին) Սիւլէյման պին Հաշամ առժամապէս գրաւած են Կեսարիան (Խալիլ Էտհէմ, Գայսէրի Շէհրի նոյն) և մինչև Ամասիա առաջացած (Քէմալէտտին, էջ 231)։

Այս պարբերական յարձակողականներու միջոցին է որ Պաթթալ Ղազի կոչուած նշանաւոր թուրք մը խիստ շատ դիւցազնութիւններ ըրած և Բիւզանդեան բանակներուն մէջ նետուած է։ Պաթթալ Ղազի մասնաւորապէս Կեսարիոյ շուրջը կատարած է շատ մը հերոսութիւններ։ Քեաթիպ Չէլէպի թուրք պատմագիրը իր Ճիհաննիւմային մէջ կը գրէ թէ Կեսարիոյ մէջ Պաթթալ Ղազի անունին շինուած է մզկիթ մը որ այսօր ալ ցոյց կը տրուի հին քաղաքին (Էսկի Շէհիր) կողմը (Քէմալէտտին, էջ 232)։

Լեւոն Իսաւրացի, որ իսկապէս զինուորական մըն էր, արաբներու այս վաղանցուկ և մասնակի յաջողութիւններուն դիմագրաւելու ոյժ ունէր և կրնար զանոնք թերեւս բոլորովին ընկճել, եթէ ներքին յուզումներ պետութիւնը չտկարացնէին։ Մասնաւորապէս պատկերամարտութեան վէճերը իր ջանքերը ապարդիւն դարձուցին և ամբողջ պետութիւնը քայքայեցին։

Այս խառնակութիւններէն օգտուելով արաբները դարձեալ առաջացան դէպի Կապադովկիա, պաշարեցին Նիկիան և պարտութեան մատնեցին Պափլագոնիոյ մէջ Հռոմէական բանակ մը (Lebeau, հատ. ԺԲ, էջ 143, 169, 174, 175)։

733 էն 739, արաբները չդադրեցան արշաւելէ այնքան բազում անգամներ աւերուած այս նահանգները։

Սակայն Լեւոն Իսաւրացի իր մահէն տարի մը առաջ անոնց վրայ Փռիւգիոյ մէջ վճռական յաղթանակ մը տարաւ և զանոնք հարկադրեց վերջնապէս քաշուելու (Գելցեր, նոյն, էջ 154 և Asie Mineure, էջ 502)։

Իր որդին՝ Կոստանդին Ե. Կոպրոնիմոս (741–775) օգտուելով արաբական աշխարհը յուզող ներքին շփոթութիւններէն, կրցաւ նոր փայլ մը տալ Բիւզանդական պետութեան մինչև Հայաստանի սիրտը՝ Կարին առաջանալով (752)։ Սակայն չափազանց վաղանցուկ էր այս փայլը, վասնզի Աբբասեան խալիֆայութեան հաստատութենէն (750) յետոյ արաբ վերակազմեալ ոյժը՝ դարձեալ պիտի սպառնար Բիւզանդական կայսրութեան, վերստին մշտակայ պատերազմավայր դարձընելով մասնաւորապէս Կապադովկիան, Կիլիկիան և ընդհանրապէս բոլոր Փոքր Ասիան, նոյնիսկ հարկադրելով Իրենէ կայսրուհին որ երկու անգամ եռամեայ զինադադար կնքելու համար 70,000 ոսկի վճարելու

նուաստութեան ենթարկուի, և 806ին Նիկեփոր կայսրը (802–811) աւելի նուաստացուցիչ պայմաններով խաղաղութիւնը գնէ։

Էլ-Մամուն (813-833) և Մոթասըմ (833–842) խալիֆաները երկար ատեն անընդհատ յարձակեցան Կապադովկիա ու Կիլիկիա և Տարսոն – Մարաշ – Մելետինէ գծին վրայ գրեթէ շարունակ կռիւ կար։

Թէոփիլոս կայսեր (829-842) զօրքերը միայն կրցան անգամ մը պզտիկ յաջողութիւն մը ունենալ (830–831ին) գրաւելով Զապետրա և Մասիս (Մոսուսիգա) քաղաքները և աւարի տալէ յետոյ, նահանջելով։

Նոյնպէս իր Մանուէլ Մամիկոնեան զօրավարը, արաբներու վրայ տարաւ փառաւոր յաղթութիւն մը, Խարսիանի մէջ որ կը գտնուէր Կեսարիոյ հիւսիսային կողմը՝ Արմենեակ Թեմին հարաւ-արեւմուտքը և առաւ 25,000 գերիներ որոնք Կ. Պոլիս տարաւ։

Թէոփիլոս նոյնպէս օգտուեցաւ արաբ պետութեան մէջ Բաբիկի կամ իր քրիստոնեայ անունով Թէոփոբոս պարսիկին, յարուցած տնտեսական սարսափելի յեղափոխութենէն, ապաստան տալով անոր և իր 30,000 պարսիկ վարձկաններուն և նախամեծար համարելով պատերազմիլ քան յանձնել զանոնք։

Ասիկա նոյնիսկ իր Հելինա քոյրը տուաւ Թէոփոբոսի և զայն շատ պատուեց, և ասով ա՛լ աւելի դրդեց Մոթասըմի ատելութիւնը, որ սոսկալի դարձաւ երբ Բիւզանդական բանակներ՝ Մանուէլ Մամիկոնեանի և Թէոփոբոսի հրամանատարութեամբ 837ին առաջացան մինչև Սոզոպետրա՝ խալիֆային ծննդավայրը և զայն աւերակի վերածեցին։ Կատղած Մոթասըմը որոշեց ինքն ալ աւերակ դարձնել կայսեր ծննդավայրը՝ Ամորիոնը՝ Ասիոյ ամէնէն մեծ, ամէնէն բազմամարդ և ամէնէն հարուստ քաղաքը։

538ին մտաւ Փոքր Ասիա, գլուխը անցած բանակի մը՝ որուն չափ ստուարաթիւ զինուորական ոյժ մը իսլամները չատոնց ի վեր չէին ունեցած։ Նոյնիսկ Ափրիկէէն զօրք բերած էր և բոլոր զօրքերը կը կրէին վահաններ, որոնց վրայ Ամորիոն անունը գրուած էր։

Այս բանակը երեք մասի բաժնուած, միեւնոյն ատեն արշաւեց Կապադովկիա և Գաղատիա, առաւ Կեսարիան — որ այս կերպով գոնէ ժամանակ մը Աբբասեան տիրապետութեան կ'ենթարկուէր — Անկիւրիան և Նիւսան, և միացաւ ամբողջովին Փռիւգիոյ սահմաններուն վրայ ի Dazimène, կայսեր հետ կռուի մտնելու համար։

Կայսրն յաղթուեցաւ և Ամորիոն պաշարուեցաւ, ըստ ոմանց 13 օր և ըստ այլոց 55 օր։

Բնակչութեան մէկ կարեւոր մասը ջարդուեցաւ։ Արաբները յետոյ կրակի տուին յիշատակարանները և այս մեծ քաղաքէն մնաց միայն մոխիրներու և աւերակներու կոյտ մը (Հմմտ. Lebeau, ժԳ. հատ. էջ 135–145, Գելցեր, նոյն, էջ 176-177, Asie Mineure. էջ 505)։

Թէոփիլոս կայսրը՝ նկուն և չարաչար պարտուած, ստիպուեցաւ խաղաղութիւնը կնքել՝ պատերազմի ծախքերը վճարելով։

Թէոփիլոսի մահէն յետոյ կայսր հրատարակուեցաւ իր երեք տարեկան տղան՝ Միքայէլ Գ. Արբշիռ կամ Հարբեցող (842–867) երեք Հայերու խնամակալութեան տակ։ Ասոնք էին Թէոդորա կայսրուհին, Վարդ կամ Բարդաս Հայկազն և Մանուէլ Մամիկոնեան։

Մանուէլ այն ատեն կը կրէր Պրոտոմագիստրոս (=առաջին Մա-



գիստրոս) տիտղոսը, և ամէն մարդ կ'ակնկալէր որ անիկա գահը պիտի գրաւէր, սակայն չըրաւ այդ բանը, այլ զօրավիգ եղաւ Թէոդորայի և Միքայէլ Գ.ի։

Այսպէս Թէոդորա ձեռք առաւ իշխանութիւնը և իր բոլոր ուժով նետուեցաւ քաղաքականութեան մէջ, ջանալով ներքին կռիւները ջնջել և արտաքին պատերազմներով տէրութիւնը ընդարձակել։ Հայ կայսրուհին ի ցոյց բերաւ կարողութիւն մը՝ որուն կրնային նախանձիլ բազմաթիւ կայսրեր։

Սակայն այս կայսրուհին մեծ սխալ մը գործեց սաստիկ հալածելով Պաւղիկեանները որոնք պետութեան արեւելեան սահմանները՝ Տաւրոսի և Եփրատի արեւմտեան կողմը հաստատուած էին և կազմելով քաջ գունդեր՝ կը հանդիսանային իսլամներու դէմ սահմանագլուխի կենդանի ամրութիւնը։

Թէոդորա կայսրուհիի այս սխալը, անշուշտ օրթոտոքս կղերէն թելադրուած, իր յաջորդները նոյնքան անհեռատեսութեամբ շարունակեցին և ջնջեցին Պաւղիկեանց ոյժը, որ Կապադովկիոյ և Պոնտոսի, մասնաւորապէս Կողոնիայի, Տիփրիկէի և Արգէոսի շուրջը, իբր ռազմիկ տարր մը, գերազանց էր։

Թէոդորա նախ անոնց վրայ ղրկեց Արկիրի որդին Լէոնը, Անդրանիկոս Դուկասը և Սուտալիոնը (տես Պատմ. Սեբաստիոյ, էջ 110) որպէսզի կամ դարձնեն ուղիղ դաւանութեան և կամ ջարդեն անխնայ։

Այս երեք հրամանատարներն անհնարին տանջանքներով սպաննեցին ահագին թուով մարդ և անոնց ինչքերը յարքունիս գրաւեցին։

Պաւղիկեաններու պետը Սարգիս մեռած էր, և անգլուխ մնացած էին, ուստի փախան ինկան անտառախիտ և մացառուտ տեղեր և վայրենի կեանք մը սկսան վարել և իրենց կատաղի ասպատակութիւններով աւերեցին Պոնտոսը, Կապադովկիան և Փոքր Հայքը (Lebeau, հատ. ժԳ. էջ 178)։

Անոնց դէմ կայսրուհին ղրկեց իր եղբայրը Պետրոնասը որ շարունակեց իր նախորդներու անողոք խստութիւնը սակայն չկրցաւ արմատախիլ ընել այս աղանդը։

100,000 Պաւղիկեաններ մորթազերծ եղան կամ գլխատուեցան 835էն սկսեալ (Հ. Բարսեղ Սարգիսեան, Ուսումնասիրութիւն Մանէքեան-Պաւղիկեան-Թոնտրակեցիներու աղանդին, էջ 46)։

Վերջապէս յուսահատութիւնը զանոնք մղեց զէնք առնելու։ Կարբէաս կամ Կարպաս (Carbeas) անուն մէկը, Անատոլեան թեմին կուսակալին Թէոտոր Մելիսենի գրագիրը, հաւաքեց 5000 մարդ և իսլամներէն օգնութիւն խնդրեց։

Խալիֆան անոնց բնակավայր որոշեց Կապադովկիոյ մէջ Արգէոս լեռը ուր անոնք կեդրոնացան և հրահանգ տուաւ Մելետինէի էմիրին որ ամէն աջակցութիւն և օգնութիւն ընծայէ իրենց։ Տարագրեալ հերձուածողներու այս բաց և անպաշտպան ապաստանը շուտով անբաւական եղաւ։

Երկու քաղաքներ շինելէ յետոյ Արգէոս լերան վրայ (Թէոփանէս Շարայարեալ, էջ 103) Կարբէաս հիմնեց երրորդ մը Տեփրիկէ կամ Տիբրիկ (Téphrique կամ Tibrique= արդի Տիվրիկ) անունով Կողոնիոյ (Colone) թեմին սահմաններուն մօտ, շատ ամուր դիրքի մը վրայ (տես նաեւ Օրմանեան, Ազգապատում, էջ 977–8)։

Այս նոր քաղաքը եղաւ կայան մը ապստամբութեան։ Պաւղիկեանք միացած արաբներուն սարսափ սփռեցին բոլոր ասիական նահանգներուն մէջ։

Պաւղիկեանք սպանեցին իրենց հաւատոյ հալածիչները, որոնք իրենց արիւնռուշտութեամբ ետ չէին մնար միջնադարեան հաւատաքննիչներէն և սկսան հրոսակային արշաւանքներ պետութեան մէջ։

Օմար, Մելետինէի էմիրը, որ պաշտօն ունէր ամէն կերպով օգնել այս աղանդաւորներուն, նուազ չաւերեց Կապադովկիան և Պոնտոսը, և առաջացաւ մինչև Բիւթանիա (Lebeau, հատ. ԺԳ. էջ 180) և առաւ հազարաւոր գերիներ (Asie Mineure, էջ 506–507), աջակցութեամբ պետութեան սահմանագլուխին վրայ խարիսխ բռնած Պաւղիկեաններու, որոնք պետութեան զօրքերուն դէմ արձակազէնի յաջող կռիւներ մղեցին։

Պաւղիկեանները՝ այսպէս բռնութեան և հալածանքի հետեւանօք նետուած դրացի մուսլիման պետութեան գիրկը, դադրեցան — ինչպէս երբեմն էին — բնական ամբարտակ ըլլալէ արաբներու դէմ և դարձան անոնց դաշնակից և մեծամեծ հարուածներ հասցուցին կայսրութեան։

Անոնք մինչև Կեսարիոյ շրջանակը այս միջոցին իրենց ազդեցութեան տակ ունէին։

Ասոր փաստն է այն մեծ պարտութիւնը որ Թէոդորայի անսահման վստահութիւնը վայելող ապիկար ներքինին՝ Թէոկտիստը կրեց Կեսարիոյ հիւսիսային կողմը, Մաւրոպոտամոն (Սեւ Ջուր) կոչուած վայրը, Մելետինէի էմիրէն, և փախաւ Կ. Պոլիս, 40 հազարնոց բանակ մը սոսկալի վտանգի մէջ ձգելով (843ին)։ Զօրքին մէկ մասը անցաւ թշնամիին կողմը և իսլամութիւնը ընդունեց։

Կռիւը շարունակուեցաւ միշտ այս շրջանին մէջ, ուր կը տեսնենք 859–861ին ալ Մելետինէի էմիրը՝ Օմար Բիւզանդիոնի հետ կռիւի մէջ։

860ին անիկա մտաւ Կապադովկիա, Միքայէլ կայսրը 45,000 զօրք հաւաքելով գնաց անոր վրայ, իր հետը առնելով ծերունի Մանուէլ Մամիկոնեանը, որ պահած էր Հայ պահնորդ գունդին հրամանատարութիւնը։ Մազ մնաց որ Միքայէլ կայսրը գերի իյնար Օմարի ձեռքը եթէ Մանուէլ զայն չ'ազատեր։

Օմար իր հետ ունենալով կայսրութեան անհաշտ թշնամի Պաւղիկեանները, 861ին, Կապադովկիան, Պոնտոսը և Կիլիկիան ամայի անապատ դարձուց, և քանդեց ու աւերեց Փոքր Ասիան և 60,000 գերի տարաւ իր հետ։

Օմար չափազանց քաջալերուած յաջորդ տարին (861) 40,000 զօրքով մտաւ Արմենեան թեմը և հասաւ մինչև Ամիսոսի (= Սամսոն) ծովեզերքը, և մեծ աւար ժողովեց անկէ։

Սակայն ի վերջոյ արաբները Պոսոն (կամ Պոսոնտա) քաղաքին(1) մօտ պարտուեցան։ Օմար սպանուեցաւ և իր որդին գերի ինկաւ Բիւ-

(1) Այս քաղաքը կը գտնուէր Արմենեակ թեմին և Պափլագոնիայի սահմանագծին վրայ. թէեւ որոշ չէ տեղը (տես Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, թ. 11, Վարդ Մամիկոնեան)։ Ամասիոյ մօտ կը նշանակէ Գեր. Աղեքսանդրեան (Պատմ. Սեբաստիոյ, էջ 113)։



զանդացւոց ձեռքը (863 սեպ. 3) (տես Հայրենիք, Ը. տարի, թ. 11, էջ 101)։

Այս պատերազմին յաղթականն էր Պետրոնաս Թէոդորա Հայ կայսրուհիին կրտսեր եղբայրը և գլխաւոր դերակատարներն էին Փոքր Ասիական և մանաւանդ Արմենեական բանակաթեմին զինուորները։

Պոսոնի յաղթանակը պատմական խոշոր երեւոյթ էր։ Զինուորական երկարատեւ և փոփոխական մրցութենէ մը յետոյ, առաջին անգամ էր որ Բիւզանդական զէնքը փայլեցաւ գերիվերոյ ռազմական ուժի և մանաւանդ արուեստի առաւելութեամբ։

Պետրոնաս կրցած էր արաբական բանակը ցանցի մէջ ձգել և անհեղ հարուածով ջարդել 'ի սպառ։

Մելետինէի էմիր՝ Օմարը և Պաւղիկեանց պետ՝ Կարբէասը ինկան Պոսոնի ճակատամարտին մէջ, իսկ Ալի Իպն Եահեա զօրավարը սպանուեցաւ ամիս մը յետոյ Նփրկերտի (= Մուֆարղին) մօտ խառնուելով կայսերական զօրքերուն հետ, որոնք յաղթութենէն յետոյ յառաջացեր էին և մտեր արաբական հողերը (863 Հոկտ. 18–Նոյեմ. 16 Ռամազան ամսուան միջոցին) (Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, թ. 11, էջ 104)։

Այս յաղթութեան հետեւանօք ապահովուեցաւ երկար ատեն Արեւելքի խաղաղութիւնը։

Թէոդորայէն յետոյ Վասիլ Ա. (867–886) շարունակեց ինքն ալ Պաւղիկեանց դէմ կրօնական պատերազմը որ կը վարէր անոնց նոր պետը Քրիսկիւրոս (Կիւրշահր կամ ըստ յունաց Կրիսոշեր)՝ Կարբէասի որդին որ անոր յաջորդած էր 863ին (Պատմ. Սեբաստիոյ, էջ 114) և Մալաթիոյ նոր էմիրին հետ իր հօրը պէս զինակցելով, մեծ չարիք կը հասցնէր։ Անիկա նոյնիսկ խրոխտաբար մերժած էր Միքայէլ Գ.ի (842–867) խաղաղութեան բանագնացները, իրենց համար կրօնական ու քաղաքական ազատութիւն պահանջելով (Օրմանեան, Ազգապատում, էջ 978)։

Պաւղիկեանները և Մալաթիոյ էմիրին զօրքերը, կը մտնէին Փոքր Ասիա և ասպատակութեամբ կ'արշաւէին մաս մը մինչև Նիկիոյ և Նիկոմիդիոյ դուռները և մաս մը Եփեսոսի կողմերը։ Նոյնիսկ Եփեսոս ինկաւ անոնց ձեռքը և աւերուեցաւ։ Քաղաքին Ս. Յովհաննէս Աւետարանիչ եկեղեցին կողոպտուեցաւ։

Վասիլ կայսրը մայրաքաղաքի չփոթներով զբաղած, չկրցաւ անմիջապէս անոնց դէմ ելլել, ուստի ուզեց խաղաղութեամբ կարգադրել գործը, և Պետրոս Սիկիլիացին ղրկեց Պաւղիկեան պետին մօտ հաշտութիւն կնքելու համար։ Պետրոս երկու տարի մնաց Տիվրիկ, սակայն չկրցաւ բաղձացուած նպատակին հասնիլ, այլ միայն գերիները փրկեց։ Քրիսկիւրոս կը պահանջէր որ Վասիլ հրաժարի Փոքր Ասիայէն և գոհանայ միայն պետութեան եւրոպական բաժինով։ Ուստի Վասիլ կայսրը անձամբ 871ին անոր դէմ գնաց։

Պաւղիկեանք որ մինչև Գաղատիա ասպատակած էին և Պոնտական Կոմանան կողոպտած՝ ի վերջոյ չարաչար պարտուեցան և անսահման աւար թողուցին կայսեր ձեռքը։ Սակայն Վասիլ չկրցաւ առնել անոնց անառիկ ամրոցը՝ Տիվրիկը (872)։

Յաջորդ տարին Պաւղիկեանց պետը իր ասպատակային արշա-

ւանքները տարածեց մինչեւ Սամոսատ և Նախկին Դ. Հայք, թէեւ չկրցաւ գրաւել ամուր Մելետինէն։

Սակայն Տիվրիկի շրջակայքը գտնուող և արաբներէ բնակուած ու Մալաթիոյ էմիրի հնազանդող և Պաւղիկեանց հետ գործակից շատ մը քաղաքներ, սարսափած Վասիլի խստութենէն, անցան անոր կողմը և հնազանդիլ խոստացան։ Ասոնց մէջ առաջինը եղաւ Տարսոս (Թարսս) աւանը։ Նոյնպէս այս պատերազմի միջոցին Քուրդիկ կամ Քուրդիկոս հայ, Փոքր Հայոց իշխանը որ Լոքանա ամրոցին տէրն էր(1) և Միքայէլ Բ. կայսեր ատեն ապստամբած, և որ յաճախ Բիւզանդական սահմանները կ'ասպատակէր, անձնատուր եղաւ (Թէոփանէս շարայարեալ, էջ 268 Կենտրենոս Բ. էջ 207, Վասիլիէֆ, Բ. 31)։

Քրիւսկիւրոս՝ Մալաթիոյ քով կրած իր մեծ պարտութենէն վերջն ալ, դժուարութիւն չքաշեց նոր բազմաթիւ զօրք հաւաքելու, ինչու որ Պաւղիկեանք բոլորն ալ առ հասարակ զինուոր էին։ Այս պատճառով աւելի մեծ ուժով ասպարէզ եկաւ և Կապադովկիա մըտնելով ամէն բան աւրշտկեց։

Վասիլ ուզեց անձամբ անոր դէմ երթալ, բայց իր աւագանին զայն այդ տեսակ պատիւի մը արժանի չէին համարեր։

Վասիլ այն ատեն Պաւղիկեան պետին դէմ ղրկեց իր ազգական Քրիստափոր հայ զօրավարը, որ Քրիւսկիւրոսը գտաւ Ակրան (մօտը Սեբոր կամ Պատրիկէ քաղաքին, Կապադովկիոյ մէջ)։ Բայց անիկա չուզեց կայսերական բանակին դէմ ճակատիլ և ժողոված աւարներով քաշուեցաւ Տիվրիկ։

Քրիստափոր, որուն բանակին միացած էին Բարձր և Փոքր Հայոց զօրքերը ևս, այն ատեն երկու վաշտերու, — իւրաքանչիւրը 600 անձէ բաղկացած, մին Հայերէ և միւսը Կապադովկիացիներէ — պաշտօն տուաւ, հսկել Քրիւսկիւրոսի շարժումներուն վրայ հեռուէն (Կոստանդին Ծիրանածին, Գիրք Ե. 41, 73)։

Կը պատմուի թէ այս առթիւ Հայք և Կապադովկիացիք իրարու հետ հակառակութիւն ցոյց տուած են (Պատմութիւն Սեբաստիոյ, էջ 118), սակայն ի վերջոյ յաջողած են կռիւի մը ընթացքին սպանել Քրիւսկիւրոսը(2) (տես նոյն)։

Քրիստափոր այն ատեն կը դիմէ իր բանակովը Տիվրիկի վրայ ուր կը մտնէ առանց ուէ ընդդիմութեան, որովհետեւ սաստիկ երկրաշարժ մը որ նոյն տարին պատահած էր, քաղաքին բնակչութեան հեռանալուն և անոր պարիսպներուն փլուզումին պատճառ եղած էր։

Բիւզանդացիք զայն գտան աւերակներու կոյտ մը (873)(3)։

Պաւղիկեանք կոտորուեցան, ցրուեցան և գերի տարուեցան ու բանի զինուորագրուեցան, և այսպէս վերջացաւ անոնց զօրացած սարսափը և 25 տարիներէ ի վեր Փոքր Ասիոյ մէջ տիրող տագնապը (տես Asie Mineure, էջ 507, համմտ. Դելցեր, էջ 198–199)։

---

(1) Քուրդիկ կը տիրէր Թաքմա Սուի վերին հովիտին սկսեալ 872էն։

(2) Գելցեր (էջ 198-199) կ'ըսէ թէ ան սպանուած է 874ին բաւական խարդախ և ստոր եղանակով մը յոյնի մը ձեռքով որուն անիկա առաջ շատ օգնած էր։

(3) Գելցեր կը պատմէ թէ Բիւզանդացիք զայն հիմնայատակ կը կործանեն։



Այսպէս Վասիլ անոնց տուաւ վերջին հարուածը և ջնջեց անոնց կրօնական հանրապետութիւնը։

Վասիլ՝ Պաւղիկեանց լիակատար պարտութենէն յետոյ անձամբ իր Կոստանդին որդիին հետ եկաւ Կեսարիա, ուրկէ առաջանալով հպատակեցուց կամ վանեց կարգ մը արաբ էմիրներ՝ որ այդ կողմերը կը բռնանային։ Յետոյ մտաւ Կիլիկիա և առաջացաւ մինչեւ Գերմանիկ (=Մարաշ) բայց չկրցաւ զայն գրաւել (880)։

Յետոյ դարձաւ Կեսարիա և անկէ Կ. Պոլիս։ Մինչեւ Սուրիա իր տիրապետութիւնը ապահովելով Վասիլ Ա. Մակեդոնացի, ծագումով Հայ կայսրը (Դելցեր, էջ 195), Կապադովկիան ամբողջութեամբ վերստին Բիւզանդական իշխանութեան կ'ենթարկէր, և կերպով մը ապահովութիւն կու տար Փոքր Ասիոյ։



ՎԱՍԻԼ Ա.Ի ԴՐԱՄԸ

Դժբախտաբար խաղաղութիւնը տեւական չէր ըլլար, վասնզի արաբները՝ Կիլիկիա հաստատուելէ ու պահ մը Եգէական ծովու և Միջերկրականի կղզիներուն վրայ յարձակումներով և ծովահէնութեամբ զբաղելէ յետոյ, դարձեալ սկսան Կապադովկիոյ սահմանագլուխին վրայ նեղել Բիւզանդացիները, Լեւոն Իմաստասէր կայսեր (886–912) ժամանակ (Asie Mineure, էջ 508)։ Տարսոնի էմիրն Թագաճ, մտաւ Կապադովկիա, առաւ շատ մը ամրոցներ, ի մէջ այլոց նաեւ Կորոնէ մեծ բերդը և հարկադրեց կայսրը որ գնէ դրամով խաղաղութիւնը և առանց փրկանքի դարձնէ 2054 գերիներ, ի փոխարէն արաբ նոյնքան թուով գերիներու (Պատմ. Սեբաստիոյ, էջ 122)։ Պատերազմը փոփոխակի յաջողութիւններով շարունակուեցաւ նաեւ յաջորդ տարիներուն գրեթէ առանց ընդհատման։ Կոստանդին Ծիրանածին կայսեր (913–959) անուանական իշխանութեան ժամանակամիջոցին երբ Հայ զինուորականներ պետութեան ղեկը ձեռք առած էին, արաբներու դէմ մղուած կռիւը առաւ ոգեւորութիւն՝ Կապադովկիոյ մէջ։

Ռոմանոս Լեկաբենոս կայսրը (920-944) յաջողութեամբ առաջ տարաւ Պաղտատի խալիֆաներու դէմ մղուած կռիւը և բիւզանդական սահմանները՝ Արեւելեան կողմէն՝ Ալիսէն մինչեւ Եփրատ փոխադրեց։ Մելետինէն՝ այդ կարեւոր կամրջագլուխը և անհաւատներու յարձակման գլխաւոր կայանը՝ Բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան հզօր յենակէտը դարձաւ և կուրապաղատ մը հրամանատար կարգըւեցաւ այդ տեղերուն վրայ, որոնք երկար ատեն իսլամ տիրապետութեան ենթարկուած էին։

Այս շրջանին գլխաւոր դէմքն է Հայ ընտիր զօրապետ Յովհաննէս Գուրգէն կամ Գուրգուաս, որ շատ մը նշանակելի յաջողութիւններ ունեցաւ արաբական ճակատին վրայ։

Անիկա քսան երկու տարի (920–942) իսլամներու հետ կռիւ մղեց անընդհատ և ծանր պատերազմներով, տէրութեան սահմանները Ալիսէն մինչև Եփրատ և Տիգրիս առաջ տարաւ և երկու անգամ պաշարեց Մալաթիան որուն արաբ էմիրը Բիւզանդիոնի գերիշխանութեան ենթարկուեցաւ (Գելցեր, էջ 213)։

Կապադովկիա անգամ մըն ալ լայն շունչ առաւ և գոնէ դարու մը համար «անհաւատ» թշնամիներէն գրաւուելու վտանգին տակ ըլլալու սարսափէն ազատեցաւ։

Մասնաւորապէս Բիւզանդական արեւելքի համար Յովհաննէս Գուրգուասի յաղթութեանց չափ «ահագին նշանակութիւն ունէր, ինչպէս կ'ըսէ Գելցեր (նոյն, էջ 214) արեւելեան քրիստոնեաներու՝ վերածնութիւնը» այսինքն Հայոց և Վրաց իսլամական լուծը թօթափելով իրենց անկախութիւնը ձեռք բերելը։

Հայաստան ձերբազատուած խալիֆաներու իշխանութենէն և սերտօրէն կապուած Բիւզանդիոնի հետ, կը կազմէր քրիստոնէութեան համար պաշտպանութեան նախադուռ։

Արաբները՝ որոնք արեւելքէն կ'սպառնային կայսրութեան եռ կը մղուէին և կը սահմանափակուէին Ատրպատականի լեռներէն անդին, վասնզի Յովհաննէս Գուրգէն ամուր ձեռքով մը կը կառավարէր Անատոլեան երկիրները, և խստութեամբ կը պատժէր արաբ էմիրները։ Անիկա մինչև Վանայ ծով, տարածած էր Բիւզանդական երկիրը, Կապադովկիոյ շնորհելով խաղաղութիւն մը որ դժբախտաբար երկար չտեւեց։

Իր դարուն մեծագոյն զօրավարներէն մին համարուած այս զինուորականը՝ հակառակ Բիւզանդական պատմագիրներու որ զինքը կը ներկայացնեն Անատոլեան բանակին սպարապետ, կը թուի թէ գոնէ ժամանակ մը Կապադովկիոյ մէջ կուսակալի պաշտօն վարած է, վասնզի Յովհաննէս կաթողիկոս իր պատմագրութեան մէջ (էջ 401) կը յիշատակէ թէ Աշոտ Բ. Երկաթ Հայոց թագաւորէն Ուտի գաւառին վերակացու կարգուած Ամրամը «որ ըստ ուժեղականութեան անձինն Ցլիկ ի բազմաց յորջորջէր . . . . . ի բաց որոշէր ի հնազանդութենէ Տաճկանն կոչեցեալ Տաճ եւ լքեալ խոտեալ անարգեալ զքնիկ տէրութիւնն իւր» 927ին «հանէր հաւանէր մտանել ընդ լծով ծառայութեան անընիկն Գուրգենայ, որ իշխան իշխանաց էր Գամրաց աշխարհին, նաեւ զայլս եւս զբոլոր նախարարութիւն այնմ նահանգին դառոյք ինքեան տուեալ ինոյն յարդարէր յապստամբութիւն»։

Գուրգէնը ոչ-բնիկ, այսինքն ոչ-հայ ուրիշ մէկը չէր կրնար ըլլալ եթէ ոչ Յովհաննէս Գուրգէնը(1), որուն Հայաստանի սահմաններուն վրայ տեսնուիլը կ'երեւայ թէ Հայոց այս կեդրոնախոյս գաւառներուն իշխանները խրախուսած է ապստամբիլ իրենց բնիկ թագաւորէն և յարիլ իրեն։

Յովհաննէս Գուրգէն, Պոնտոսը նուաճելէ յետոյ արաբներուն դէմ գնաց և Թէոփիլոս Գուրգէն եղբօրը (ըստ M. Ph le Bas, տես Asie Mineure էջ 509) կամ զաւկին (ըստ Դուրեանի, տես Ազգ. Պատմութիւն,

---

(1) Դուրեան (Ազգ. Պատմ. էջ 337) այդ դէպքը կը յիշէ տալով «Գամրաց իշխան Գուրգէն»ին անունը առանց անդրադառնալու թէ ո՞վ է։ Իսկ Օրմանեան երբեք անունը չէ տուած, և Ամրամ Ցլիկի անոր յարած ըլլալը չէ յիշած (Ազգապատում, էջ 1087)։ Չամիչեան (Բ. էջ 802) ճարտար հնարքի մը դիմած է Գուրգէնը Ափխազաց թագաւոր շինելով առանց ոեւէ բանաւոր պատճառի։ Զարմանալի է որ ոչ ոք մինչեւ ցարդ կրցած է անդրադառնալ իրողութեան որ Յովհաննէս Պատմագիր շատ յստակօրէն գրած է։



էջ 352) հետ, որ Միջագետաց զօրավարն էր (նոյն) քսան տարիի չափ յունաց գունդերուն հրամայեց Ասիոյ մէջ և նշանաւոր յաղթութիւններ տարաւ արաբաց դէմ, հազարի չափ քաղաքներ և բերդեր հանեց անոնց ձեռքէն, և մինչեւ Վան յառաջացաւ (Asie Mineure, էջ 508 – 509)։

Օգնեց Հայոց Արաս թագաւորին Եփրատէն անցնելէ յետոյ, և ապա իջաւ Եդեսիա և առաւ Դաստառակը իբր փրկանք և Կ. Պոլիս տարաւ այս գանձը (944 օգոս. 15)։

Յովհաննէս Գուրգէն պաշտպանած է նաեւ մայրաքաղաքը ռուսերու դէմ (941)։

Ռոմանոսի տապալումը (944 դեկ. 16) որ առաջ բերաւ նաեւ Յովհաննէս Գուրգէնի պաշտօնանկութիւնը, կարծես թէ քաջալերեց արաբները որոնք դարձեալ զօրանալ սկսան և նոյնիսկ այնքան առաջացան որ Ալիս գետը անցան։

Յովհաննէս Գուրգէնի տեղ նշանակուած սպարապետը՝ Պանդիրիոս չկրցաւ պաշտպանել Կապադովկիան։

Ժ. դարուն սկիզբը Համատանի արաբ տոհմին՝ Միջագետքի և Տիարպէքիրի շուրջը՝ հաստատուած իշխանութեան պետերէն Սէյֆէլ-Տովլէ Ալի պին Հէմտուն (կամ Համտուն Սէյֆ-էտ-Տուլահ) — այլ անունով Քափտան — այնքան զօրացաւ որ երկու ամիս կայսրութեան սահմանները ասպատակելէ և աւերելէ յետոյ, մտաւ Կապադովկիա հզօր բանակով մը և բազմաթիւ բանաստեղծներով՝ որոնք կու գային տեսնել իր քաջութիւնները և զանոնք յաւերժացնել։

Այդ բանաստեղծները ի մեծ դժբախտութիւն քրիստոնեայ աշխարհին յուսախաբ չեղան։

Ծուխի փոխուած յունական քաղաքները, 30000 յոյներու վրայ գոցուած գերեզմանները, 2000 նոր բնակիչներու առջեւ բացուած բանտերը, այդ բանաստեղծներուն ներշնչեցին մարգարէութիւններ որոնցմով անոնք կ'երազէին միւսլիման հաւատքին վերջնական յաղթանակը։

Սէֆը էտ Տուլահին առաջին արշաւանքը որ այնքան յաջող սկիզբ ունեցած էր և այնքան մեծ ուրախութիւն պատճառած՝ արաբ բանաստեղծներու, վաղամեռիկ եղաւ սակայն, վասնզի Բիւզանդական բանակին հրամանատարը՝ Վարդ Փոկաս անոնց ծանր հարուած մը տուաւ։

Երբ անոնք կ'անցնէին Տաւրոս լեռներէն, Կիկերոնեան կիրճէն, յանկարծ ժայռերու ծոցէն, դուրս ժայթքեց փողերու գոչիւն մը, ռազմի աղաղակ մը և Վարդի բանակը, որ դարանի նստած՝ այդ րոպէին կ'սպասէր, յանկարծական գրոհ մը տուաւ։

Դիակներ ծածկեցին ժայռերու կատարները, հոն կեր եղան արծիւներուն։ Անթիւ էին աւարն և գերին։

Վարդ Փոկաս, առանց ժամանակ տալու թշնամիին որ իր ուժերը հաւաքէ, հասաւ Ասորիք, ուր հինգ հազար հոգի սրամահ ըրաւ և 3000 հոգի շղթայի ենթարկեց (950) (Հմմտ. Հ. Կ. Տէր Սահակեան, Հայ կայսերք Բիւզանդիոնի, Վենետիկ, 1903, Բ. հտ. էջ 133-134)։

Կապադովկիան, Կապադովկիացիի մը քաջութեամբ փրկուած էր։

Սակայն մէկ հարուածով ամենայն ինչ չաւարտեցաւ։ Արաբները նոր ուժերով կրկին յարձակեցան երկու տարի յետոյ և Հալէպի ու

*Տարօնի էմիրները տարբեր ճամբաներով մտան Կապադովկիա և տակն ու վրայ ըրին։*

*Վարդ Փոկաս իր առաջին մեծ յաղթութիւնը չկրցաւ մշտնջենաւորել, վասնզի իր բանակին մէջ կարգապահութիւնը խանգարուած էր։ Այնպէս որ պարտուեցաւ առաջին ճակատամարտին մէջ իսկ և հազիւ ազատեցաւ գերութենէ* (Պատ. Սեբաստ. *էջ* 126)*։*

*Այսպէս փոփոխակի յաջողութիւններով կռիւը շարունակուեցաւ։*

*Փոքր Ասիան, գարնան ժամանակ, յունաց կը պատկանէր, ձմեռ ժամանակ՝ արաբներուն։ Երկու ազգերն ալ զուրկ էին Հռոմէական ծիրքէն՝ գանգալ բայց հաստատուն տիրակալութիւն մը կերտելու համար։ Գիտէին տիրել, բայց ոչ պահել։ Այս պատճառով անհագին թիւով երիտասարդներ զոհ կ'երթային սուրի։*

*Երկու հեղեղներ էին, որ թափ ունէին և աղմուկ, բայց յաճախ կը ցամքէին* (*տես*, Հայ Կայսերք, *էջ* 145)*։*

*Վարդ Փոկաս շատ ծերացած ըլլալով, իրեն յաջորդեց իբր Դեմեստիկոս* (grand domestique = *վերին հրամանատար*) *իր որդին՝ Նիկեփոր Փոկաս, իսկ երկրորդ որդին՝ Լեւոն կարգուեցաւ կուսակալ Կապադովկիոյ և երրորդը՝ Կոստանդին՝ կառավարիչ Սելեւկիոյ (Կիլիկիա) և տեղակալ միւս երկու եղբայրներուն։*

*Նիկեփոր Փոկաս, յաջողութեամբ առաջ տարաւ պայքարը և առաջացաւ մինչեւ Եփրատ շարունակական յաղթանակներու շարքով։*

*Իր բանակին մէջ էր Յովհաննէս Զմշկիկ որ Սամոսատի ճակատամարտին մէջ* (954) *ցոյց տուաւ իր զինուորական հանճարին առաջին ցոլքերը։*

*Քափտան սակայն իր կրած շարունակական պարտութիւններէն չխրատուեցաւ և ճիշդ այն պահուն որ Նիկեփոր զբաղած էր Կրետէն նուաճելու, կազմեց երկու բանակ, որոնցմէ մէկը կը գտնուէր իր ազգականին՝ Ապոլասարի, և միւսը՝ իր հրամանին տակ։*

*Ապոլասար մտաւ Կապադովկիա։ Լեւոն Փոկաս որ շատ զօրք չունէր իր ձեռքին տակ, խոյս տուաւ ուղղակի ճակատելէ և նահանջեց մինչեւ Գաղատիա, ուր յանկարծակի յարձակմամբ ջարդ ու փշուր ըրաւ թշնամին* (960)*, և Ապոլասարը գերի բռնելով Կ. Պոլիս ղրկեց։ Միւս բանակը՝ որուն ինք կը հրամայէր յաղթեց Նիկեփոր և Կոստանդին Փոկասներու և վերջինը գերի բռնելով սպանեց։*

*Նիկեփոր Փոկաս, Կրետէն նուաճելէ յետոյ, ահեղ բանակով մը, իր եղբօրը Կապադովկիոյ կառավարիչ Լեւոնի հետ, արշաւեց Սէյֆ Էլ-Տուլէի երկիրները և ջախջախելով անոր բանակը գրաւեց 55 բերդեր և Դոլիխէնէ, Հերապոլիս և Անարզաւա քաղաքները և առաջացաւ մինչեւ Հալէպ* (962) *սակայն իմանալով որ Դամասկոսի Ալի էմիրը օգնութեան կուգայ, ետ քաշուեցաւ հարուստ աւարով* (962 *դեկտ.*)*։*

*Նիկեփոր Փոկաս, որ զինուորական տաղանդ մըն էր,* 963 *օգոս.* 16*ին կայսերական գահ բարձրանալէ յետոյ, իրեն կեդրոնավայր և ռազմական խարիսխ ունենալով Կապադովկիան, իր հայրենիքը, յաջորդաբար երեք տարի Կիլիկիա, Սուրիա և անդրեփրատեան երկիրներ արշաւեց։*

*Նիկեփոր Բ. Փոկաս իսկապէս զինուորական մըն էր, որ Բիւզանդական գահուն վրայ կը բազմէր իր արժանիքներովը։ Եւ իրաւամբ պատմագիրը կ'ըսէր իրեն համար.* «Այն ժամանակ եւեւցաւ Փոկաս



իբր կայծակ եւ սլացաւ Հռոմայեցւոց թշնամիներուն դէմ...: Ան կործանեց, այրեց, գերի վարեց բարբարոսներու քաղաքները եւ երկիրները: Ցիրուցան թշնամիներ ջարդեց եւ տարածեց Հռոմայեցիներու իշխանութիւնը եւ ույժը: Կը սարսէին Արաբները, կը դողային Հայերը եւ Ասորիները, Սարակինոսները կը նահանջէին եւ Թուրքերը կը փախչէին եւ Հռոմայեցիները կը տիրապետէին անոնց տեղերը եւ երկիրները եւ Փոկասի անունը ամէնուն համար սարսափելի էր» (Գէորգ Համարտոլոս):

*Անիկա իր իշխանութեան ատեն իր առաջին մտահոգութեան առարկան ըրաւ բանակը։*

*Զինուորական ծախքը ահագին գումարներու կը հասնէր և ժողովուրդը կատղած էր ծանր հարկերու ճնշման տակ, որ կայսրը բարդած էր քաղաքացի ժողովուրդին վրայ։ Անիկա կղերն ալ ստիպեց իր հարուստ ստացուածքներէն բաժին հանել պետութեան ծախքերուն։ Որպէսզի իր զինուորներուն հայրենասիրութիւնը գրգռէ կը պահանջէր որ անհաւատներուն դէմ մղուած պատերազմին ժամանակ բոլոր սպանուածները մարտիրոս հրատարակուէին։*

*Նիկեփոր, առաւելապէս քաղաքական հաշիւներով, արեւելեան միաբնակ քրիստոնեաները հրաւիրեց բնակիլ աւերակ դարձած Մելետինէն, հանդիսաւորապէս խոստանալով թէ պիտի չկրկնուին քաղկեդոնականութեան անունով հալածանքները, սակայն օրթոտոքս կղերը կարճմտութեամբ դրժեց կայսեր խօսքը և հալածանքներ ըրաւ։*

*Նիկեփոր անձամբ գնաց արաբներուն դէմ* (964) *և տիրեց Կիլիկիոյ։*

*Նիկեփորի կը յաջորդէ, Յերապոլիս (= Զմշկածագ) ծնած, Կապադովկեան ծնունդ, Յովհաննէս Զմշկիկ* (969–976) *որ նոյնպէս Կապադովկիան խարիսխ ունենալով շարունակ պատերազմեցաւ հիւսիսային Սուրիոյ մէջ ընդդէմ իսլամներուն։*

*Զմշկիկ* 963*ին այնքան անռելի կոտորած տուաւ արաբներուն որ տարիներով անոնք չմոռցան* Ցումաշիկին *(ինչպէս իրենք կը կոչէին) անունը։*

*Երեք տարիէ աւելի էր որ քրիստոնեայ կայսրութիւնը կռիւ կը մղէր արաբներու կամ իսլամներու դէմ և իր սահմանները հետզհետէ առաջացնելով հասեր էր Տաւրոսի լեռնաշղթային, ուր իրեն նեցուկ ունէր Բիւզանդական կայսրութիւնը՝ սահմանապահ իշխանները* (ակրիտներ*ը*) *և կէս անկախ երկիրները, որոնց ժառանգական իշխանները պատիւներ կ'ստանային կայսրէն և անոր ճորտերը կը համարուէին։*

*Այս պատերազմներու ընթացքին Կիլիկիան վերջնականապէս նուաճուեցաւ։ Կիլիկիոյ մահմետական բնակիչներուն մեծագոյն մասը Ասորիք գաղթեցին, մէկ մասն ալ Նիկեփոր տեղափոխեց կայսրութեան ուրիշ մասերը, ուր անոնք կամ իրենց որդիները հաւատափոխ ըլլալով ձուլուեցան տիրող ազգին մէջ։ Կայսրը վճռած էր որ Կիլիկիոյ քաղաքներուն մէջ այլեւս մահմետականներ չբնակին, ուստի հին բնակիչները կամ կ'արտաքսէր կամ բռնի գաղթել կու տար, իսկ անոնց տեղ կը բնակեցնէր իր զօրականները։*

*Զմշկիկ, նոյնպէս պետութիւնը ներքնապէս ամրացնելու և սահմանագլուխները ապահովելու համար ամէն ջանք ըրաւ։ Ազանդաւոր Հայերը փոխանակ հալածելու տեղահան ըրաւ և Պալքանեան թերակղզին փոխադրեց։*

Աշխատեցաւ նաև ամրապնդել իր գահը և վերջ տալ գահուն շուրջը կատարուած պայքարներուն։

Ուստի երբ կայսր դարձաւ բոլոր իրեն հակառակորդները՝ Փոկասները, հեռացուց աքսորելով։

Լեւոն Փոկաս ղրկուեցաւ Լեսբոս, անոր երկու որդիներէն Վարդ՝ որ Հայաստանի խաղդեաց գաւառին դուքսն էր՝ Ամասիա և Նիկեփոր՝ Իմբրոս կղզի, իսկ անոր երրորդ ապօրէն զաւակը՝ անուանի զօրավար (Stratopédarque) Պետրոս Տորբասը, Անտիոքը պաշարողը և Հալէպը գրաւողը, մնաց իր պաշտօնին մէջ։ Թերեւս անոր խնայեց, որովհետև ներքինի էր։

Սակայն Լեւոն Փոկաս և անոր երկու որդիները որոնք կը պահպանուէին թեթեւ հսկողութեան տակ, և բոլորն ալ վարժ զինուորականներ էին, խոյս տուին իրենց աքսորավայրերէն և վտանգաւոր ապստամբութիւն մը յարուցին։ Լեւոն և Նիկեփոր եկան Թրակիա, իրենց կուսակիցներուն գլուխը անցնելու համար, իսկ Վարդ Փոկաս, երկրորդ զաւակը Լեւոն Փոկասի և քեռորդին սպանուած Նիկեփոր կայսեր(1), իր Ամասիոյ աքսորավայրէն խոյս տուաւ իր երկու զարմիկներուն՝ Թէոդոր Պարտաս և Նիկեփոր Փոկաս պատրիկներուն աջակցութեամբ, և իր ընտանեկան վայրը Կապադովկիա ապաստանեցաւ և Կեսարիոյ մէջ ինքզինքն կայսր հռչակելով Կ. Պոլսոյ վրայ քալեց։ Զմշկիկ անոր դէմ ղրկեց հռչակուած զօրավար մը, իր աներձագը, նոյնպէս Հայ և Փոկասեանց խնամի՝ Վարդ Սքլերոս (Բադրաս Սքլերոս կամ Սիկլառոս= խիստ) որ Անատոլեան զօրքերու Սպարապետ անուանուած էր։ Ան ակամայ գնաց և նախ խաղաղ միջոցներ փորձելէ յետոյ կռիւի մտաւ։ Վարդ Փոկաս լքուած իր զինակիցներէն պաշարուեցաւ և բռնուեցաւ և Քիոս կղզին աքսորուեցաւ (970ին)։

Զմշկիկ պուլկարները նուաճելէ յետոյ, չորս տարի (972-976) անընդհատ կռիւ մղեց արաբներու դէմ և միանգամընդմիշտ կորսուած կարծուած գաւառները, վերստին գրաւեց ահուսարսափի մատնելով մուսիլմանները։

Միջագետք և Սուրիա վերստին գրաւուեցան, Պաղտատի ամիրան հարկատու եղաւ եւայլն։

«Եւ ազգերը մեծ սարսափի մէջ էին Զմշկիկի բարկութենէն: Եւ ան տարածեց Հռոմէացւոց պետութիւնը, կը փախչէին Սարակինոսները եւ Հայերը, կը սարսէին Պարսիկները, եւ ամէն կողմէն անոր պարգեւներ կը բերէին: Անոնք անկէ շնորհ եւ խաղաղութիւն կը խնդրէին: Անիկա արշաւեց մինչեւ Եդեսիա եւ մինչեւ Եփրատ գետը եւ երկիրը լեցուած էր Հռոմայեցւոց զօրագունդերով: Ասորիք եւ Փիւնիկէն հռոմէական ուժեղ երիվարներէն ոտնակոխ եղան: Անիկա մեծամեծ յաղթութիւններ տարաւ եւ քրիստոնեաներու սուրը մանգաղի պէս կը հնձէր» (Գէորգ Համարտալոս)։

Թէև իրաւ է որ շատ բան կը պակսէր այդ վաղանցուկ յաղթութիւնները յարատեւ ընելու համար։ Գրաւուած քաղաքներու բնա-

(1) Վարդ Փոկաս ինքզինքը համեստութեամբ կը յայտարարէր նաև երախտագէտ աշակերտ Նիկեփոր Փոկասի, զոր կ'անուանէ «հմուտ ուսուցիչ»։ Վարդ Փոկաս՝ Նիկեփոր Փոկասի ռազմագիտական հանճարեղ գործը նոր խմբագրած և ներածութեամբ ճոխացուցած էր (Գելցեր, Սկզ. Բիւզ. Բանակ. էջ 66)։



կիչները, որոնք մեծ մասամբ իսլամ էին, սարսափի առաջին տպաւորութեան տակ կը հնազանդէին, սակայն գրաւական մը չկար թէ անոնք հաւատարիմ պիտի մնային։ Մանաւանդ որ Բիւզանդական պետութիւնը չունէր անհրաժեշտ ամրութիւնը, ո՛չ ներքին միութեամբ և ո՛չ ալ գահուն հաստատութեամբ։

Որչափ ատեն որ Զմշկիկ իշխանութեան վրայ էր, իր ամուր ձեռքով կրցաւ պահպանել պետական կազմը անվրդով, իբր իսկական զինուոր արթուն հսկելով բանակով։

Իսկ բոլոր քաղաքային իշխանութիւնը լքած էր Վասիլ ներքինիին, որ միանգամայն Ծերակոյտի նախագահ էր, մեծ սենեկապետ (պարակիմոմինոս= Parakoimomenos) և առաջին նախարար (proêdre)։

Երբ Զմշկիկ մեռաւ, Վասիլ ներքինին, ինքնիշխան վեհապետ հռչակեց Վասիլ Բ.ը (976-1025) և թոյլ չտուաւ որ այս անգամ ալ ազդեցիկ զօրավար մը «խնամակալ»ի դեր ստանձնէ։

Ասոր համար Վարդ Սքլերոսի գոյութիւնը վտանգաւոր նկատելով պաշտօնանկ ըրաւ (976) և դուքս կարգեց Միջագետքի մէկ մասին (Abbé Albert Vogt· Combridge Med· His· Դ. հտ. էջ 84) կամ աւելի ճիշդ Միջագետքի սահմանագլուխի թեմին, Եփրատի ձախ եզերքը (Schlumberger, L'Epopée Byzantine à la fin du Xe siècle. Paris, 1896, I. էջ 351)։

Սքլերոս, փոխադարձաբար կայսրը գահընկեց հռչակեց և ապստամբութեան դրօշակ բարձրացուց (976ի ամառը)։

Ամէն բան Սքլերոսի ի նպաստ էր, վասնզի բանակը իր հետն էր։ Անիկա յաջողութեան համար երկու բանի պէտք ունէր, զինուորի և դրամի։

Առաջինը առատօրէն տուին իրեն՝ արաբները և մանաւանդ Հայերը՝ որոնք փութացին զինքը կայսր ճանչնալու։ Ջահանի և Մելետինէի կողմերէն մինչև Տարոն հաստատուած կէս-անկախ — գլխաւորաբար Տիարպէքիրի և Մուֆարղինի էմիրները — ճորտ իսլամ իշխանութիւնները, իր կողմը անցան, ինչպէս Տարոնի Հայ Դրիգոր և Բագարատ իշխանները, որոնք ճորտ դարձած էին Բիւզանդական կայսրութեան Նիկեփոր Փոկասի ատեն (967) Կ. Պոլիս երթալով և կայսրէն պատրիկ կարգուելով՝ ռոճիկի և նպաստի ստացմամբ, (Schlumberger, Nicéphore Phocas, Paris, 1890, էջ 734, Ասողիկ, էջ 178, Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 355)։

Իսկ դրամ հայթայթելու համար Սքլերոս դիմած էր խիստ միջոցի մը։ Հարուստները կ'առեւանգէր և մեծ գումարներ իբր փրկանք առնելով կ'արձակէր։

Վարդ Սքլերոս երկու անգամ ջարդեց Բիւզանդական զօրքերը, հեղեղեց ամբողջ Փոքր Ասիան և մինչև Բիւթանիա առաջանալով լրջօրէն սպառնաց մայրաքաղաքին։

Պետրոս Փոկաս զօրավարը, որ Վարդ Սքլերոսի տեղ Անատոլեան բանակին Ստրադէտոս կարգուած էր, անոր դէմ գնաց Կեսարիա, որ այս ապստամբութեան կեդրոնավայրը ըլլալ կը թուի։

Պետրոս Փոկաս՝ կայսեր հաւատարիմ զօրքը հաւաքեց Կապադովկիա և հոն կազմակերպեց դիմադրութիւնը։

Սքլերոս սակայն առաջին անգամ յաղթեց իրեն և մտաւ Կապա-

գովկիա և հասաւ Ծամնդաւ —որ մերկ ապառաժի վրայ շինուած էր— և զայն անձնատուր ըրաւ։

Վասիլ Բ.՝ յափշտակիչին յաջողութենէն զարհուրած Լեւոն Փոկասը սպարապետ կարգեց։

Ան Փռիւգիոյ մէջ Կոտիկա երբ հասաւ գտաւ Պետրոս Փոկասն իր բանակին բեկորներով։

Լեւոն ջանաց իր կողմը շահիլ թշնամի բանակին պետերը, բայց չյաջողեցաւ, ուստի զանոնք իր ետին թողլով ինքն դէպի Արեւելք՝ Կապադովկիա առաջացաւ։ Ապստամբին զօրքերը մեծ մասամբ Կապադովկիայէն և Եփրատամերձ գաւառներէն հաւաքուած ըլլալով շատերը դասալիք եղան, մտածելով թէ Լեւոն իրենց ընտանիքներուն և ինչքերուն պիտի վնասէ։

Առաջին շփումը Սքլերոսի և կայսերական առաջապահներուն միջև ըստ Սկիղիցէսի տեղի ունեցաւ Boukoulikosի (=Քար կամ ժայռ Boukosի) կիրճին մէջ. Սքլերոսի զինուորները հոս յարձակեցան Լեւոն Փոկասի առաջապահներուն վրայ, որոնց կը հրամայէր Մագիստրոս Եւստաթէոս Մալէինոս, Կապադովկեան մեծ ընտանիքի մը և Փոկասներու ազգական տան մը շառաւիղը, որ Կիլիկիոյ Նոր գրաւուած Նահանգին Ստրատիկոսն էր (Schlum, L'Epo. Byz. I. էջ 368)։

Այս առաջապահի կռիւը լուսաբանեց Լեւոն Փոկասը որ ըմբռնեց շարժումին լրջութիւնը (Նոյն, էջ 369), և հասկնալով թէ Սքլերոս պիտի մօտէն հետեւի իր առաջապահ հեծելազօրքին, իր բանակին մեծ մասին հետ, ընդհանուր յարձակողականի հրամանը տուաւ։

Ժամանակ շահելու շրջանը անցած էր։ Վճռական գործողութիւն մը պէտք էր ընել վասնզի անկէ կախում պիտի ունենար կայսերական գահուն ապագան։

Ուստի Սքլերոս անցաւ Կեսարիոյ արեւելքէն, կասեցնել փորձեց Արեւելք եկող բանակին անցքը։

Պետրոս Փոկաս գրաւեց իր գունդերով ռազմական կէտերը Լիկանտոս թեմին, ուր Հայ գաղութ մը կը բնակէր, և բոլոր ճամբաները մայրաքաղաքը Կապադովկիոյ միացնող, ինչպէս նաեւ Անտիտաւրոսի գլխաւոր կիրճերը։ Ցետոյ սպասեց թշնամիին։

Սքլերոս, տեղեակ կայսերականներու բռնած զօրաւոր դիրքին, և կասկածոտ դարձած իր առաջապահներու խուճապէն և ձեռնթափութենէն, որոնք կը հետեւէին այս անյաջողութեան, կը թուի աճապարել ժամ առաջ կռիւի մտնելու լեռնային ընդարձակ երկրին մէջ որ զինքը Կեսարիայէն կը բաժնէր (Նոյն, էջ 369)։

Ժամանակագիրները կը պատմեն թէ ինչպէս, յետ անգործութեան շրջանի մը որուն տեւողութեան իւրաքանչիւր պետ կը ջանար իր կողմը շահիլ իր հակառակորդին զօրքերը, Սքլերոսի տեղակալներէն մին, Sachakios (Սահակ) Vrachamios(1), ստրատիկոս մը, ապահովաբար Հայ ծագումով, ինչպէս կը հասկցուի իր անունէն, որ լքած էր կայսեր կողմը անցնելով Սքլերոսի կողմը, յաջողեցաւ, իր ճառերով,

(1) Արար պատմագիր Եահեա «Իպն Պաղրամ» կամ աւելի ճշտութեամբ Իսաք որդի Վահրամի կը կոչէ այս անձը, որ թեմի կառավարիչ մը պէտք է ըլլայ, թերեւս ստրատիկոսը նոյնիսկ Լիկանտոսի (Տես L'Epop. Byz. I էջ 369)։



ներշնչել անոր որոշ չափով վստահութիւն (L'Epop. Byz. I. էջ 369)։

Անիկա համոզեց Սքլերոսը թէ իր անգործութիւնը որքան աղիտաբեր պիտի ըլլար իր վրայ հրաւիրելով արհամարհանքը իր անպատրաստ զօրքերուն։

Սքլերոս, համոզուած այս ազդեցիկ Հայէն, սկսաւ առաջ քալել։ Նոյնիսկ, ըստ Սկիղիցէսի, այս պետին խորհուրդին հետեւեցաւ ճամբուն համար, ինչ որ կ'ապացուցանէ թէ Vrachamios կամ այս երկրէն էր կամ զայն լաւ կը ճանչնար։

Երեք օրուան մէջ բանակը ճեղքեց զայն, իր առջեւէն վանելով կայսերական բանակը և հասաւ պատերուն տակ հռչակաւոր Laparaի որ Բիւզանդացիք կ'անուանէին Lykandos։ Այս քաղաքը բոլոր երկրին ամէնէն ամուր քաղաքն էր, և ռազմական կարեւոր դիրք մը ունէր (Նոյն, էջ 371)։

Սքլերոս անմիջապէս պաշարեց զայն (Նոյն, էջ 371)։

Սքլերոս ահռելի ջարդ մը տուաւ, խուճապային փախուստի մատնուած կայսերական զօրքերուն։ Պատերազմին մէջ Հայ ձիաւորները մեծ քաջութիւն ցոյց տուին։

Այս մեծ յաղթանակը որ 976ի աշնան շահեցաւ Վարդ Սքլերոս, իր առջեւ բացաւ ամբողջ Փոքր Ասիան (հմմտ. L'Epop. Byz. էջ 373–7)։

Սքլերոսի յաջողութիւնը գրեթէ ապահով էր։

Ամբողջ նահանգներ, Անտիոք, Կիլիկիա, հիւսիս-արեւմտեան Սուրիա, իրեն միացան, իրենց զինուորներով, նաւազներով, կառավարիչներով, հարուստ կալուածատէրներով (հմմտ. Նոյն, էջ 375 և Ասողիկ, էջ 178–179)։

Քաղաքային պատերազմը խոշոր համեմատութիւն առած էր և Վարդ Սքլերոսի բանակները կը յառաջանային Կեսարիայէն (Cotyacum (= Կուտինա= Քէօթահիա)։

Մայրաքաղաքը ահուդողի մատնուած էր, սակայն Վասիլ չյուսահատեցաւ։

Վասիլի կողմէն 977ին ղրկուած իր հանդերձապահը, Լեւոն Ներքինին, չկրցաւ կաշառել ապստամբները։

Վասիլ Oxylithusի մէջ յաղթեց ապստամբներու խումբի մը, սակայն պարտութիւն մը կրեց Rhegeasի մէջ, ուր Պետրոս Փոկաս ինկաւ (977ի վերջը)։

Սքլերոս առաջացաւ դէպի Կ. Պոլիս և պաշարեց Նիկիան զոր կը պաշտպանէր Մանուէլ Կոմնենոս։ Քանի մը շաբթուան պաշարումէ մը յետոյ, Մանուէլ ստիպուեցաւ անձնատուր ըլլալ և Սքլերոս մտաւ Նիկոմիտիա իր վերջին հանգրուանը դէպի Կ. Պոլիս, նոյնպէս նաեւ իր վերջին յաղթութիւնը (Abbé Albert Vogt. Cambridge Med. Hist. Դ. հտ. էջ 85)։

Վասիլ Բ. որ ըստ Կետրենոսի միայն Աստուած ունէր ապաւէն այս տագնապալի վայրկեանին, կոչում ըրաւ Վասիլ Ներքինիին՝ այս ճշմարտապէս պետական մարդուն խորհուրդով՝ Բարդաս Փոկասի (Վարդ Փոկասի) (978 մարտ) Սքլերոսի մրցակիցին և Նիկեփոր կայսեր եղբօրը՝ որ Զմշկիկի դէմ ապստամբած ըլլալուն համար՝ Սքլերոսի կողմէն ձերբակալուած և Քիոս կղզին աքսորուած էր եօթը տարիէ ի վեր (հմմտ. L'Epop. Byz. 398–400)։

Վարդ-Փոկաս սպարապետ կարգուեցաւ Վասիլ Բ.ի հաւատարիմ

մնացած զօրքին։ Կայսերական բանակը Կեսարիա էր և գրեթէ պաշարուած, վասնզի ճամբան մինչև Նիկիա՝ Սքլերոսի զօրքերը բռնած էին։ Վարդ Փոկաս գաղտագողի Կեսարիա գնաց, ցրուած զօրքերը հաւաքեց, կարգաւորեց և ոգեւորեց և ապա դարձաւ դէպի Կ. Պոլիս՝ Սքլերոսը կոնակէն պաշարելու և երկու սուրի մէջ ձգելու համար։

Սքլերոս որ իբր զօրավար Փոկասէն բարձր էր (Գելցեր) նախ Փոկասի դէմ կռուեցաւ և երկու անգամ անոր յաղթեց, նախ 978 յունիս 19ին Ամորիոնի (Amorium = Համզա Հաճի) մօտ Pankalia դաշտին մէջ (L'Epopée Byz. էջ 402) ուրկէ կանոնաւորաբար նահանջեց դէպի Charsianum(1) ուր կրեց երկրորդ պարտութիւն մը (Cambridge Med. Hist. Գ. հտ. էջ 86 և L'Epopée Byzantine I. էջ 401–408 մանրամասնութիւններ) դիւցազնաբար կռուելէ յետոյ։

Փոկաս՝ ստիպուեցաւ ետ քաշուիլ դէպի Վրաստան, որպէսզի տէրութեան հաւատարիմ դաշնակիցին՝ Դաւիթ Տայոց Կիւրապաղատին կամ «Իպերիոյ արքայ»ի քով, նոր զինուորներ վարձէ (978-979ի ձմեռը)։ Սքլերոսի ալ օգնութեան հասաւ Հալէպի արաբ էմիրը։

979 մարտ 24ին Ալիսի շուրջը Pancaliaի (Ամորիոնի մօտ) մօտ տեղի ունեցաւ երրորդ ճակատամարտ մը (հմմտ. L'Epo. Byz. I. 409, 415-418 և Ասողիկ, էջ 180) որ դարձեալ ձախող սկզբնաւորութիւն մը ունեցած էր Փոկասի համար, սակայն անակնկալ յաջողութեամբ մը վերջացաւ վասնզի մենամարտին մէջ Փոկաս ձիէն վար գլորեց զգայազիրկ Սքլերոսը, որուն ձին առանց իր տիրոջ երբ սկսաւ վազել ապստամբներու շարքին առաջ, անոնք կարծեցին թէ Վարդ Սքլերոս սպանուած է և անկարգ նահանջեցին և փախուստի դիմեցին։

Վարդ Սքլերոս՝ իր Կոստանդին եղբօրը և Ռոմանոս զաւկին հետ 979ի ամառուան վերջերը ստիպուեցաւ անցնիլ արաբական սահմանը և փախիլ Նփրկերտ և Պաղտատի ամիրային օգնութեան ապաստանիլ։

Կ. Պոլիս փրկուած էր։

Պաղտատի ամիրան զայն իբր բանտարկեալ պահեց իր քով (979-986) և սակայն չյանձնեց Վասիլ Բ.ի որ շատ աշխատեցաւ իր հակառակորդը ձեռք անցնել Խալիֆան համոզելով։

Իր փախուստէն յետոյ քաղաքային պատերազմը ժամանակ մը եւս շարունակելէն յետոյ՝ ապստամբները անձնատուր եղան կայսեր։

Կապադովկիա ինչպէս Եփրատի արեւմտեան կողմը գտնուող միւս գաւառները՝ Լիկանտոս, Կողոնիա և Սեբաստիա, բաւական նեղութիւններ կրեցին, ինչպէս տեսնուեցաւ, այս ներքին պատերազմներուն պատճառով։

Վարդ Փոկաս, Անատոլեան բանակին հրամանատարը արշաւեց մինչև Տարա (Եփրատի վրայ) և զայն առաւ և աւարեց, սակայն դարձեալ հաշտութիւն կնքեց արաբներուն հետ հին պայմաններով։ Ներքին ապստամբութիւնը ընկճուած և արտաքին թշնամին վանուած էր սակայն Կապադովկիա չկրցաւ խաղաղութիւն գտնալ։

(1) Schlumberger (էջ 408) Charison կամ Charsian կը կարդայ։ Ասիկա գլխաւոր քաղաքն էր համանուն թեմին՝ հին Գաղատիոյ հողամասին վրայ։ Արդի Ագ-տաղի հիւսիսային լեռնային շրջաններուն մէջ։ Ramsey կը նոյնացնէ զայն Garsi կամ Karlssa de Ptoleméeի հետ, որ կը գտնուէր 2-3 մղոն հիւսիս-արեւմուտքը արդի Ալաճա գիւղին։



Վասիլ Բ. որ մինչև այն ատեն անուանական վեհապետութիւն մը վարած էր, Սքլերոսի ապստամբութիւնը հազիւ զսպուած ուզեց կառավարութեան ղեկը ինքն ստանձնել և կիրարկել իշխանութիւն մը որ իր ձեռնարկներով տհաճոյ թուեցաւ աւագանիին այնպէս որ անոնց գլխաւոր ծննդավայրը՝ Կապադովկիա նորէն ատաղձ հայթայթեց նոր ապստամբութեան մը։

Կապադովկիոյ Խարիսանա (Charisan) ամրոցը՝ կապադովկեան ազնուապետութեան գլխաւոր ներկայացուցիչ Մելեսինոսներու տան մէջ, օժանդակութեամբ նոյն տունէն Լեւոն Մելեսինոսի եղբօր՝ Թէոգնաստի և Մագիստրոս Եւստաթէոս Մալեսինոսի զօրքերուն, և ի ներկայութեան Անատոլեան հօլին ազնուականութեան, 987, օգոստոս 15ին կայսր հռչակուեցաւ Վարդ Փոկաս, (L'Epo. Byz. I. էջ 686) այն որ ընկճած էր Վարդ Սքլերոսը, որ հազիւ չորս ամիս առաջ (987 մարտ) նորէն Կապադովկիոյ սահմաններուն վրայ երեւցած էր, նոր փորձ մը կատարելու համար։

Վարդ Փոկաս՝ Սքլերոսի առաջին ապստամբութիւնը զսպելէն յետոյ ութը տարի (979-987) իր ձեռքին մէջ պահած էր ասիական զօրքերու սպարապետութիւնը, բացարձակ լիազօրութեամբ, և յաջողութեամբ կռուած էր արաբներուն դէմ և բանակին մէջ ձեռք բերած էր ամենամեծ հեղինակութիւն։

Վարդ Փոկաս, որ դժգոհ զինուորականութիւնը կը ներկայացնէր, Վասիլ Բ. անխորհրդաբար շնորհազուրկ ըրած էր։

Վարդ Սքլերոսի զինուորական ձիրքերէն օգուտ քաղելու համար Պաղտատի խալիֆան գերի քրիստոնեայ զօրքերով զայն պարսիկ ապստամբներու դէմ ղրկած էր և այս քաջ զօրավարը՝ 3000 հոգիով յաղթած էր անոնց։

Ասկէ յետոյ, ըստ յոյն պատմիչներու, անիկա իր զօրքերը առնելով փախուստ տուած էր, սակայն աւելի հաւանական է մտածել Գելցերի հետ թէ Պաղտատի ամիրապետը Բիւզանդական կայսրութիւնը տկարացնելու և միանգամայն Սքլերոսի և գերի քրիստոնեաներու ծառայութիւնը վարձատրելու համար զանոնք արձակած ըլլայ։

Վերջապէս այսպէս կամ այնպէս ան անցած էր Եփրատը և եօթը տարուան աքսորէ մը յետոյ նորէն Բիւզանդական երկիր մտած էր Մալաթիայէն, ուրկէ 11 տարի առաջ ալ սկսած էր իր չորս տարի տեւող պայքարը Վասիլ Բ.ի դէմ։

Անիկա կրկին ինքզինքն կայսր հռչակած էր, եօթը տարիներու անջրպետէ մը յետոյ սկսելով նոյն պայքարը, նոյն գործունէութեամբ նոյն վայրի կորովով և յուսահատական թափով։

Հազիւ Մալաթիա յաղթական մուտք գործած էր, իր դրօշին տակ հաւաքուած էին, ինչպէս 11 տարի առաջ, խումբ մը յամառ կողմնակիցներ ամէն ցեղէ և ամէն հաւատքէ, անապատի հորթաններ, Տաւրոսի և Եփրատի մարզերու բախտախնդիրները, և բազմաթիւ պետեւիներ։ Հմայուած այս մարդուն փայլուն արժանիքներէն որ գիտէր ինքզինքն այնքան սիրցնել զինուորներուն, այս անապատի ազատ զաւակները ընդգրկեցին խանդավառութեամբ իր դատը, իր հրամանին տակ վազելով կռուի փառքին և աւարին։

Նոյնպէս, ինչպէս միշտ այս դարուն, բազմաթիւ մարտիկներ Հայ ցեղէ, տակաւին այնքան պատերազմիկ —մինչ յետոյ պիտի դառնային

այնքան խաղաղասէր— միացան Հռոմէական կայսեր անհաշտ հակառակորդին։ Վարդ Սքլերոս, դարձեալ դիմեց օգնութեանը դրացի Սարակինոս հարստութեանց, ի մէջ այլոց, Ամիթի զօրեղ էմիրին (տես L'Epopée Byz. I. էջ 674–679, և Ասողիկ, էջ 238)։

Սքլերոսի Մալաթիա հասնիլը երբ կ'իմացուի, Վասիլ Բ. կը վերահաստատէ Վարդ Փոկասը Արեւելեան բանակին դոմեստիկոսի աստիճանին մէջ (987, ապրիլ 3) և անոր կը ղրկէ զինուոր և պաշար որպէսզի ապստամբը հարուածէ և մաքրէ կայսերական երկիրը (Նոյն, էջ 684)։

Վարդ Փոկաս, անվստահ կայսեր խոստումներուն, կը բանակցի Սքլերոսի հետ, և հաւանօրէն անոր հետ համաձայնութեամբ ինքն ալ կայսր կը հռչակէ ինքզինքն, ինչպէս որ տեսնուեցաւ, Կապադովկեան ազնուականութեան օժանդակութեամբ։

Զինուորականութիւնը այս նոր թեկնածուին կողմն էր։ Ինչպէս իր հօրեղբայրը Նիկոփոր Փոկաս, նոյնպէս նաեւ իր մրցակիցը Վարդ Սքլերոս, Վարդ Փոկաս եւս ծագումով Կապադովկիացի էր, անդամ մը Փոքր Ասիոյ հողատէր և աւատական մեծ ազնուապետութեան։

Ո՛չ մէկ ընտանիք պահած էր այս երկրին հետ իր կապերը, ո՛չ մէկը աւելի զօրաւոր և ժողովրդական էր քան իրը, ո՛չ մէկը աւելի հետեւորդ պահած էր։

Նիկեփորի ատեն, Կապադովկիա մեծ բախտաւորութիւն ունեցած է, վասնզի Փոկասները իրենց համշիրակները բարիքներով լեցուցած են։ Կապադովկիոյ մարդիկը լրացուցած էին բանակը և վարչութիւնը։ Շատեր ազդեցիկ մարդեր դարձած էին։ Հիմա բոլորն շնորհազուրկ եղած էին խիստ ձեռքին տակ Վասիլ Ներքինիին որ իրենց ցեղին ոխերիմ հակառակորդը նկատուած էր, ուստի բոլորն ալ պատրաստ էին երջանիկ զօրավարը ընտրելու կայսր, որպէսզի վերադարձնէր իրենց զօրութիւնը և ազդեցութիւնը (Նոյն, էջ 691)։

Յետոյ Կապադովկիան, անմիջական դրացի սարակինոս հողերու, էր էապէս զինուորական երկիր մը։ Ասիոյ բանակները այս նահանգէն կը հայթայթէին զինուորները որոնցմէ շատերը Փոկասներէն մէկուն ձեռքին տակ գործած էին (Նոյն, էջ 691)։

Երեք կայսրեր, Վարդ Սքլերոս, Վարդ Փոկաս, և Վասիլ, երեքն ալ հայածին, կ'ոկոէին պայքարի։

Քաղաքային պատերազմը կրկին պետութեան կ'սպառնար, մինչ Պուլկարները պատրաստ էին Եւրոպայի կողմէն կայսրութեան երկիրները խուժելու։

Վասիլի տապալումը անխուսափելի էր եթէ երկու թագապահանջ ապստամբները անկեղծ ըլլային իրարու հանդէպ։

Արհեստաւոր գողերու պէս անոնք համաձայնեցան միասին Կ. Պոլսոյ վրայ քալել և հոն կայսրութիւնը բաժնել։

Փոկաս պիտի ստանար մայրաքաղաքը և Եւրոպեան նահանգները և Սքլերոս՝ Փոքր Ասիան (Հմմտ. L'Epopée Byz. էջ 693)։

Սակայն Կապադովկիոյ մէջ երկու թագապահանջներուն միջև 14 սեպտ. 987ին տեղի ունեցած խօսակցութեան մը պահուն Փոկաս դաւեց Սքլերոսի և զայն բանելով բանտարկեց Տիրոպէա (Tyropaeum)(1)

(1) Արդի Ըյկըն (L'Epop. Byz. I. էջ 69[illegible])։



բերդին մէջ իր կնոջ հսկողութեան տակ և ինքն առաւ կայսերական տիտղոսը։

Փոկաս որ հիմակ միակ պահանջողը կը մնար գահուն, աճապարեց քալել դէպի Կ. Պոլիս որուն պատերուն տակ հասաւ 988ին, նուաճելով Փոքր Ասիոյ հացահատիկներու երկիրներուն մեծագոյն մասը։

Իր բանակին կէսը Քրիսուպոլիս (=Սկիւտար) կեցաւ, իսկ միւս կէսը պաշարեց Աբիտոսը (Abydos) Նեղուցէն անցնող նաւատորմը և պաշարը գրաւելու համար (տես Abbé Albert Vogt. «Cambridge Med. His.» Դ. հտ. էջ 88)։

Վասիլ՝ օրինաւոր կայսրը սահմանափակուեցաւ միայն մայրաքաղաքին և Պալքանեան թերակղզիին մէջ, ուր պուլկարները ողողեր էին։ Անիկա գէշ կացութեան մատնուած էր, որուն սակայն հրաշալի քաջութեամբ դիմագրաւեց։

Վասիլ Ռուսերու օգնութեամբ շահեցաւ Քրիսուպոլսոյ փառաւոր յաղթութիւնը (Նոյն, էջ 88)։

Միեւնոյն ատեն Տարօնցի իշխանազուն հայ մը, Տրապիզոնի կողմերը անձկութիւն պատճառեց Փոկասի բանակին արեւելեան թեւին և պարտաւորեց զայն իր Իպերեան (վրացի) զօրախումբը իր հայրենիքը պաշտպանելու ղրկել, մինչ ինքը իր տեղակալին, Լեւոն Մելիսինոսի օգնութեան գնաց ի Աբիտոս, ուր Վասիլ կը յարձակէր փրկելու համար Հելլեսպոնտոսի այս ամենակարեւոր բանալին (Հմմ. Epop. Byz. էջ 732–747)։

Այս քաղաքին շուրջ էր որ վերջին տռամը տեղի ունեցաւ։

989, Ապրիլ 13ի ճակատագրական բախումին մէջ Փոկաս սպանուեցաւ կամ ըստ ոմանց սառ ջուր խմելով յանկարծակի մեռաւ, և ապստամբ բանակները ցրուեցան և ջարդուեցան։

Փոկասի կինը, անմիջապէս որ իր ամուսինին մահը իմացաւ, արձակեց Վարդ Սքլերոսը, բայց այս արձակումը իրեն օգուտ մը չբերաւ։

Նոր ապստամբութիւնը 989ին ամառը սկսած՝ շուտով վերջացաւ Վասիլ Բ.ի և Վարդ Սքլերոսի հաշտութեամբ (989 Հոկտ.)։

Վարդ Սքլերոս — ինչպէս իր բոլոր հետեւորդները — ներում ստացաւ, ինչպէս նաեւ Կիւրապաղատի տիտղոս (Abbé Albert Vogt. Cambridge Med. Hist. Դ. հտ. էջ 88), սակայն շուտով մեռաւ կոյր և կէս բանտարկուած վիճակի մէջ 'ի Տիմօթէքա, 991, մարտ 6ին (Նոյն, էջ 88)։

Այս ապստամբութիւնները որոնք պետութիւնը ճգնաժամային տագնապներու ենթարկեցին, ինչպէս տեսնուեցաւ, իրենց օճախ ունէին Կապադովկիան, որ այս երկարատեւ պայքարներէն յետոյ վայելեց դար մը խաղաղութիւն, շնորհիւ Հայերուն որոնք պատուար կը հանդիսանային ընդդէմ արեւելեան վաչկատուն և բարբարոս ցեղերու, ամբողջ հարիւր տարի կուրծք տալով և չթողլով որ անոնք անցնին Հայկական բարձրաւանդակէն մտնելու համար Փոքր Ասիա։

Սակայն անօգնական և իր ծառայութեան համար ապաշնորհ յոյներէն չգնահատուած Հայաստանը, վերջապէս ընկճուեցաւ և 1021ին Հայ հողին վրայ երեւցան վաչկատուն Սելջուկեանք, որոնք կարծես թէ նախասահմանուած էին Հայաստանի և Արեւելեան Փոքր Ասիոյ դեռ այդ ժամանակ տակաւին շատ նշանաւոր քաղաքակրթութիւնը ջնջելու երկրիս երեսէն, իրենց յաջորդող և հաւասարապէս սոսկալի՝

ազգակից Մոնկոլներուն պէս՝ միայն աւերակներ թողլով (Zimmerer, ՀԱ. էջ 212, Հ. Գելցեր, էջ 262)։

Բիւզանդիոն չհասկցաւ սակայն Հայ պետութեանց ծառայութիւնը իր սահմաններու պաշտպանութեան համար և կրօնական անմիտ քաղաքականութեամբ մը նպաստեց անոնց ընկճումին և կցումին։

## Բ.

## ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Կայսրութեան բաժանումէն (395) մինչեւ Յուստինիանոսի իշխանութեան վախճանը (565), այսինքն աւելի քան մէկուկէս դարու ժամանակամիջոցի մէջ,— ինչպէս տեսնուեցաւ — Կապադովկիա միայն քանի մը մասնաւոր հարուածներու ենթարկուած է և առհասարակ վայելած է խաղաղութիւն, ինչ որ մեծապէս նպաստած է Կեսարիոյ Եկեղեցւոյն հաւատածաւալական գործունէութեան և այդ աթոռին շուրջ համախմբուած ոյժերու խիստ ուշագրաւ աշխատանքին։

Նոյնիսկ առաջին արեւելեան կայսեր՝ Արկադէոսի իշխանութեան ատեն (395–408) շարունակուեցաւ այս պայքարը որ բացուած էր հեթանոսական կրօնքին մնացորդներուն դէմ, բռնութեամբ զանոնք բնաջնջելու համար։

Այսպէս Յովհան Ոսկեբերան գրեթէ միեւնոյն ժամանակ (406) կործանել տուաւ Եփեսոս և Փռիւգիա տակաւին կանգուն մնացած Դիցամօր մեհեանները և արգիլեց Կեսարիոյ մէջ տակաւին պահուած հեթանոսական կենցաղի մնացորդ հրապարակական խառնագնացութիւնը։ Սակայն տակաւին դար մը և աւելի, պիտի տոկար հին սնանկ կարծուած կրօնքը, վասնզի Յուստինիանոս կայսեր (527–565) ժամանակ Յովհաննէս «եպիսկոպոս Ասիոյ» կայսեր հրամանով 532ին շրջեցաւ Կարիա, Լիւդիա և Փռիւգիա նահանգները (նշանակելի է Կապադովկիան յիշուած չըլլալը) և 70,000 հոգի դարձուց հեթանոսութենէ քրիստոնէութեան և մկրտեց։

Նոր մկրտեալները շինեցին քառասուն և մէկ եկեղեցիներ, իսկ կայսերական գանձը՝ յիսուն և հինգ, ընդամէնն իննսուն և վեց նոր եկեղեցիներ (տես ՀԱ. 1900, էջ 138)։

Այս քրիստոնէացման աշխատանքին մէջ մեծ դեր կատարած են Կեսարիոյ աթոռին եպիսկոպոսները որոնք եթէ ոչ Ս. Բարսեղի շնորհով և հեղինակութեամբ գէթ անոր չափ եռանդով ծառայեցին Եկեղեցիին։

Բարսեղի մահէն (379ին) յետոյ յաջորդեցին Հելլադիոս, Փառեդրիոս (որմէ հալածուեցաւ Ս. Յովհ. Ոսկեբերան), Արքեղայոս, Փիրմոս(1) (որուն ժամանակ 453ին սոսկալի ժանտախտ ու սովը տիրեց Կապադովկիոյ և Փիլոստորգիոս իր Եկեղեցական Պատմութիւնը գրեց), Անդրէաս՝ Յայտնութեան գիրքին մեկնիչը, Եղիաս, Սոտերիքոս՝ որուն

(1) Այն որուն իբր թէ Սահակ Պարթև հայրապետը այցելած է 417ին։

— 324 —

հայրենակիցն ու ժամանակակիցն Յովհաննէս 517ին Կ. Պոլսոյ պատրիարքական գահը բազմեցաւ։

Սոտերիքոսի յաջորդեց Թէոտոր Ասկիդաս 550ին, որ համոզեց Յուստինիանոս կայսրը գումարելու 553ին հինգերորդ Տիեզերական ժողովը, որ նզովեց անտիոքեան դպրոցին մեծ վարդապետները, Թէոդոր Մոպսուեստացին, Թէոդորետ Կիւրացին, և Իբաս Մծբնացին՝ անոնց ժամանակէն իբր 100 տարի ետքը (Zimmerer, ՀԱ. 1900, էջ 212)։

Կապադովկեան Եկեղեցին ուրեմն ունէր տակաւին մեծ ազդեցութիւն և իր պետերը իբր Պոնտոսի էքսարքներ՝ Օրթոտոքս Եկեղեցւոյ նուիրապետութեան մէջ կը գրաւէին կարեւոր տեղ մը և կը վայելէին հեղինակութիւն։

Կեսարիա կը պահէր նաեւ մտաւորական կեդրոնի և քրիստոնէական կրթութեան վառարանի համբաւը, պահելով Հռոմէական շրջանէն իր դպրոցը(1) (տես վերը, էջ 277–279)։

Դժբախտաբար խաղաղ բարգաւաճման այս շրջանը երկար չտեւեց, և Կապադովկեան Եկեղեցիին ծաղկումը և զարգացումը կանգ առաւ և Կեսարիոյ մտաւորական կեանքի վառարան՝ իր բարձրագոյն վարժարանը անչքացաւ, վասնզի Յուստինիանոսով և կրնանք ըսել իր սխալներով, սկսաւ Բիւզանդական կայսրութեան ալ անկումը։

Դարձեալ խռովութիւններու և պատերազմներու թատերավայր դարձաւ Արեւելքը, որ խաղաղութեան շրջան մը ունեցած էր Կոստանդիանոսէն մինչեւ Յուստինիանոս, ոչ թէ անոր համար որ պատերազմները բոլորովին դադրած էին, այլ անոր համար որ կայսրութեան ոյժը բաւած էր Արեւելքի սահմանագլուխը Տիգրիսի կամ առնուազն Եփրատի քով պահելու և Կապադովկիան զերծ կացուցանելու թշնամի բանակներու ասպատակութենէն, բացի մի քանի անցողակի տագնապներէ։ Սակայն Յուստինիանոսի աշխարհակալական յանդուգն քաղաքականութիւնը, որ չափազանց վեր էր պետութեան զինուորական և դրամական ոյժէն, պատճառ եղաւ Բիւզանդական պետութեան անկման՝ յաջորդ դարուն (Գելցեր, Նոյն, էջ 59–60) ինչպէս նաեւ Եկեղեցւոյն և անոր Կապադովկեան աթոռին բարգաւաճ կեանքին քայքայման։

Արեւելեան Հռոմի այս ամէնէն աւելի դրուատեալ կայսեր թէ՛ արտաքին և թէ՛ եկեղեցական քաղաքականութիւնը հաւասարապէս վնասակար եղաւ պետութեան, վասնզի իր գործադրած ճնշումը՝ միակ ազգի և միակ կրօնքի մը մէջ ձուլելու համար կայսրութեան բոլոր այլազան կրօնքները և ցեղերը, պատճառ եղաւ որ արեւելեան երկիրները միապետութենէն բաժնուին։

Իր ծայրայեղ կեդրոնացման քաղաքականութիւնը որ ամէն ինչ

(1) Սեբէոս (էջ 212) խօսելով Քաղկեդոնի ժողովին վրայ, որ 451ին գումարուած է, կ'ըսէ թէ ներկայ էին մեծ առաջնորդ վարդապետներ «արուեստաւոր քաղաքացն Եգիպտացւոց, եւ Աղեքսանդրացւոց եւ Հռոմայեցւոց եւ Կոստանդնուպոլսեցւոց եւ Անտիոքացւոց եւ ԿԵՍԱՐԱՑԻՈՑ եւ Աթենացւոց եւ Կիլիկեցւոց»: Ըստ Պրոֆ. Ն. Արտոնցի (տես Հայրենիք, Բ. տարի, թ. 2, էջ 93) այստեղ «արուեստաւոր» բառը կը համապատասխանէ յունարէն Techeի, Technikosի և կը նշանակէ «գիտնական» կամ «գիտուն»։

— 325 —

պետութեան մայրաքաղաքին մէջ կեդրոնացուց, գաւառները անշքացման պատճառ եղաւ։

Անիկա նոյնիսկ իր կեդրոնացման քաղաքականութիւնը կիրարկեց գիտութեանց մարզին մէջ և փակեց Աթէնքի համալսարանը 529ին, կամ աւելի ճիշդ արգիլեց փիլիսոփայութեան և իրաւագիտութեան դասաւանդութիւնը բոլոր քաղաքներու մէջ, վերապահելով անիկա մի միայն մայրաքաղաքին և մասամբ Պէյրութին։ Առանց հաշուելու Եդեսիոյ դպրոցը, որ փակուեցաւ Զենոն կայսեր հրամանով (489ին), Աղեքսանդրիոյ, Անտիոքի, Կեսարիոյ դպրոցները մեծապէս տուժեցին իր դարուն և անշքացան։ Ասով հանդերձ անոնք շարունակեցին խղճալի պայմաններով, պահել իրենց գոյութիւնը, մինչև որ արաբական արշաւներու խառնաշփոթութեանց զոհ գացին կամ անոնց թոհուբոհին մէջ նուազեցան և կործանեցան (տես Բրոֆ. Ադոնց, Հայրենիք, Բ. տարի, թ. 2 և 3)։

Այսպէս Կապադովկեան Եկեղեցին առաջին հարուածը կրեց Յուստինիանոսի քաղաքականութեան, և չկրցաւ իր բարձր մտաւորական ոյժերով՝ ինչպէս երբեմն, շարունակել իր բարոյական առաքելութիւնը, որ ուսեալ և զարգացած միտքով մարդիկ կրնային կատարել, վասնզի բոլոր Արևելք իսկապէս մխրճած էր Հռոմէական ապականութեանց մէջ, և ոյժով մարդոց պէտք կար մաքառելու համար տիրող բարքերու անկումին և ընդհանուր անբարոյացման դէմ, որ պետական վարչութիւնն ալ ապականած էր, այնպէս որ հեղինակ մը ամենայն իրաւամբ ըսած էր՝ այդ ժամանակներուն վրայ խօսելով, թէ «պաշտօնակատարութիւնը միայն արտօնեալ աւազակութիւն մըն էր» (տես Lebeau, հատ. Ե. էջ 89)։

Յուստինիանոս փոխանակ Եկեղեցին ծառայեցնելու բարձրագոյն իտէալի մը, զայն միջոց գործածել ուզեց ազգերը ճնշելու և բռնի կազմելու համար միութիւն մը, որ կը կաշկանդէր ազատ մտածութիւնը։

Սակայն Արևելքի միտքը՝ որքան անհանդարտ ու խուզարկու նոյնքան միստիք և խորհրդապաշտ, չէր կրնար հանդուրժել պետական դաւանանքի մը կաշկանդումներուն և կ՚ըմբոստանար Բիւզանդական կայսրութեան վարիչներուն Յուստինիանոսով ընդգրկած ծրագիրին, որ էր կրօնքով և լեզուով ձուլել և միացնել և Բիւզանդացի անունով արուեստական ազգ մը կազմել Փոքր Ասիոյ և Պալքանեան այլազան ժողովուրդներէն։

Մէկ կերպ մտածելու պարտադրութիւնը առաջ բերաւ տարբեր կերպով մտածելու միտում մը և սկսաւ յամառ պայքար մը պետական կրօնքին և այդ ազատ մտածողներուն միջև։ Բոլոր անոնք որ պետական կրօնքը կը մերժէին նկատուեցան հերձուածող և աղանդաւոր և տագնապի մատնեցին պաշտօնական Եկեղեցին, որուն միութիւնը եղծաւ, միաբնակութեան և երկաբնակութեան, կամ հակաքաղկեդոնականութեան և քաղկեդոնականութեան վէճերով, և Մոնտանեան, Մանիքեցւոց և Պաւղիկեան աղանդներով։

Ի զուր անցան ահագին ճիգերը որ կատարեցին Ուղղափառ Եկեղեցիին վարիչները և անոնց հովանաւոր կայսրերը, առաջքն առնելու համար պառակտումներուն։ Հազիւ մէկը ջնջուած միւսը կը ծնէր։ Հալածանքը որ այդ աղանդներուն դէմ կը գործադրուէր յաճախ աղէտալի կը դառնար, վասնզի զանոնք կը մղէր իբր ազատարարներ ընդունելու կայսրութեան թշնամիները։



Աղանդաւորութիւնը՝ այսպէս չափազանց նպաստեց յաջողութեան Բիւզանդիոնի թշնամիներուն որոնք տեղացիներու համակրութիւնը իրենց կողմը ունեցան։

Արաբներու արագ յաջողութեան գաղտնիքը այս կերպով կրնայ մեկնուիլ։ Ասով է որ միայն կարելի է ըմբռնել Է. դարուն արևելեան ընդարձակ նահանգներուն կորուստը, մաքառումի շրջանէ մը յետոյ որ շատ կարճ տևեց։

Արաբական արշաւանքը՝ բաժնելով պետութենէն այն նահանգները որոնք հակաքաղկեդոնական կամ միաբնակ քրիստոնեաներով լի էին ինչպէս նաև Մոնտանեան և Պաւղիկեան աղանդաւորներով, կերպով մը կայսրութեան մէջ կրօնական միութեան մը ստեղծուելուն և առժամապէս վէճերուն վերջ դրուելուն նպաստեց (տես վերը էջ 303)։

Ասով թերևս Օրթոտոքս Եկեղեցին իր ընդհանուր կազմին մէջ և Յոյն-Բիւզանդական կայսրութիւնը ներքնապէս կը զօրանային, սակայն Կապադովկեան Եկեղեցին, խորունկ ու ուժգին հարուածներ կ՚ընդունէր և գրեթէ իր նախկին կարևորութիւնը և հեղինակութիւնը կը կորսնցնէր, վասնզի ո՛չ միայն իր իրաւասութեան տակ գտնուող արևելեան նահանգները կայսրութենէն կը բաժնուէին և կը դժուարանար օտար տիրապետութեան տակ գտնուած այդ նահանգներու քրիստոնէից վրայ իշխանութիւն բանեցնել, այլ իր հօտը — որուն մէջ այլազան տարրեր կային — ներսէն կը պառակտէր։

Քաղկեդոնի ժողովը՝ (451) գեղեցիկ պատրուակ մը եղաւ որ Ե. դարէն ի վեր իրենց ազգային ինքնուրոյն Եկեղեցին կազմակերպելու հետամուտ Հայերը, բոլորովին բաժնուէին և չճանչնային Օրթոտոքս Եկեղեցւոյ հեղինակութիւնը և հետևաբար Կեսարիան՝ իրեն աթոռ ունեցող Պոնտոսի էքսարքին իրաւասութիւնը՝ Հայ Եկեղեցւոյն վրայ։

Հետևաբար Կապադովկեան Եկեղեցին սկսաւ հետզհետէ անշքանալ։ Այս անկումը գահավէժ հանգամանք մը առաւ, երբ աղանդաւորներով լի գաւառներուն Արաբ տիրապետութեան ենթարկուելէն յետոյ պայթած նոր աղանդ մը — Պատկերամարտութիւնը — բոլոր Յոյն կայսրութիւնը՝ մէկ ծայրէն միւսը տակնուվրայ ըրաւ։

Կայսրութեան սահմաններուն մէջ ապրող սակայն պետական Եկեղեցիէն հեռանալ համայնքները, ինչպէս նաև արաբական տիրապետութեան ենթարկուած հողամասերու մէջ ազատօրէն ապրող աղանդաւոր զանգուածները, մասնաւորապէս Մոնտանեանք և Պաւղիկեանք, պատկերներու յարգութիւնը իբր կռապաշտութիւն կ՚արհամարհէին, (Zim. ՀԱ. 1900, էջ 212, Գելցեր, էջ 157)։

Կոստանդիանոս անուն եպիսկոպոս մը, Փռիւգական Նիկոլիա քաղաքէն, կողմնակից հանդիսացաւ այս վարդապետութեան և գաղափարակիցներ գտաւ նաև բարձրագոյն կղերին մէջ։ Իսլամներուն մեղադրանքը՝ ուղղուած պատկերներու, նշխարներու և սուրբերու պաշտամունքին դէմ, իր խորունկ ազդեցութիւնը ունեցած էր այս վարդապետութեան ընդգրկումին մէջ, որ Փոքր Ասիական ծագում ունէր (Գելցեր, էջ 157)։

Լևոն Իսաւրացի ինքն ալ անոր յարեցաւ և 726ին հրովարտակով մը դէմ արտայայտուեցաւ Պատկերապաշտութեան, և այսպէս ամբողջ

կայսրութիւնը և քրիստոնեայ աշխարհը նոր խռովքի ու տագնապի մատնելու պատճառ եղաւ։

Մասնաւորապէս վանական կղերը որուն ապրուստի աղբիւրներէն մէկն էր պատկերներու նկարումը, սաստիկ հակառակեցաւ Պատկերամարտութեան։

Հակաթոռ կայսր մը նոյնիսկ մայրաքաղաքին վրայ քալեց պատկերապաշտութեան կուսակիցներու գլուխը անցած (727) սակայն Լեւոն Իսաւրացի յաջողեցաւ զայն վանել և բոլոր ըմբոստները զէնքի ուժով զսպել և պատժել բոլոր անոնք որոնք պատկերներու յարգութեան կողմն էին։

Իր յաջորդը՝ Կոստանդին Ե. Կոպրոնիմոս (741–775) անողոք խստութեամբ առաջ տարաւ պատկերամարտ պայքարը և սաստիկ հալածեց խուժանը գրգռող վանական կղերը։

Կապադովկիա՝ վանականութեան գլխաւոր կեդրոնավայրներէն մէկը, և քրիստոնէական նկարչութեան մշակութեան գլխաւոր կայաններէն մին, չէր կրնար անտարբեր մնալ այս պայքարին մէջ, որ աղէտալի հետեւանքներ ունեցաւ իր ուժը քայքայելուն մէջ։

Արդարև նկարչութեան զարգացումը Կապադովկիոյ կղերին մէջ շօշափելի փաստերով կ'ապացուցանէ գերման գիտունը՝ Zimmerer որ կ'ըսէ թէ երբ նկարիչի մը պէտք ըլլար՝ եպիսկոպոսին կը դիմուէր (տես Բարսեղ, Ճառ ի Բարղ. գլ. գ. (կենդանագիր = Ζωγράφος) Գր. Նիւսացի՝ Ճառ ի Ս. Թէոդ.)։ Զարմանալի է որ պետութիւնն ալ քաջալերած էր վանականներու մէջ արուեստներու տարածումը։ Մեծն Կոստանդիանոս արտօնութիւններ տուած էր նկարիչներուն և խճանկար շինողներուն և 375ին կայսերական հրովարտակ մը աւելի ընդարձակած էր անոնց տրուած արտօնութիւնները։

Կարեւոր է Գրիգոր Նազիանզացիի գեղարուեստական սա նկատողութիւնը (տես, Տաղ վասն իւր ժէ. տես, Migne Լէ. էջ 1262) թէ լաւագոյն նկարիչը ան է որ իր պատկերներուն կենդանի կերպարանք, կեանք կը ներշնչէ, քան այն որ գեղեցիկ գոյներ առոյգ իրարու կը խառնէ եայլ (տես նաեւ իր միւս խօսքերը՝ անդ 1220, ճառ ԼԴ. եւլն)։

Քրիստոնէական հին նկարչութիւնը զարգացած էր գլխաւորաբար դամբարաններու նկարչութեամբ, որ հեթանոսութենէն փոխանցուած էր քրիստոնէութեան, նիւթ ունենալով Ս. Գրոց դրուագները, քրիստոնէական նշանակները, և այլ (Համ. Zim. ՀԱ. 1900, էջ 225)։ Այս գետնադամբարաններու նկարները՝ որոնց կարգը կրնանք դասել նաեւ որմնանկարները, իբր ստեղծագործութիւն չեն ներկայացներ մեծ գեղարուեստական արժէք, այլ շատ համեստ արտադրութիւններ են։ Իրենց կրօնական-խորհրդանշական նպատակն որոշ սահմանի մը մէջ կը պահէր արուեստը։ Նոյնպէս անոնց տեղը՝ ստորերկրեայ դամբարաններ, որոնք հազիւ կը լուսաւորուէին լապտերներով, անկարելի կը դարձնէր նկարումը նրբին մանրամասնութեանց, և աւելի խիստ գիծեր և վառ գոյներ կրնային տեղ գտնել։ Նպատակը միշտ ընդհանուր տպաւորութիւնն է, ուստի թէ՛ ձեւերը և թէ՛ այն մասերը՝ որոնք գաղափարին հետ կապ չունէին, ինչպէս ոտքերը եւայլն, անխնամ նկարուած են և տարօրինակ անճշդութիւններ ունին։ Պատկերներու նիւթը մեծ մասամբ Փրկիչը և Աստուածածինն է, միշտ շրջապատուած Առաքեալներէ և Սուրբերէ։ Քրիստոս միշտ նկարուած է մօրուօք, իբր



տիպար առնական գեղեցկութեան՝ հնութեան իմաստով։ Իսկ Առաքեալները որ անմօրուս կը նկարուէին, Դ. դարէն սկսեալ մօրուսաւոր կը գծուէին և այս ձեւը տիրող կ'ըլլայ։ Քրիստոս իբր վարդապետ աշխարհի՝ գալարուն թուղթով մը կամ գիրքով կը նկարուէր։ Ունի երբեմն լուսապսակ և երբեմն ո՛չ։ Հոգին Սուրբը կը նկարուի իբր աղաւնի։

Դ. դարէն սկսեալ քրիստոնէական արուեստին մէջ կը մտնեն հրեշտակներ, նկարուած թեւաւոր, հին դասական արուեստին ներշնչման տակ։

Աւետարանիչներ ունին նշանակներ՝ արծիւ (Յով.), ցուլ (Ղուկ.), հրեշտակ (Մատթ.) և առիւծ (Մարկ.)։ Մարիամ-աղօթող տիպարը շատ յաճախ կը տեսնուի։ Ինչպէս բովանդակ Բիւզանդեան գեղարուեստին՝ նոյնպէս Կապադովկեան որմնանկարներուն մէջ կը տեսնուին նաեւ զուտ մարդկային դիպուածներ, հարսանիք, մահ և թաղում, տեղեր, երկիր, ծով, գետեր, աղբիւրներ, լեռներ, քաղաքներ, տարուան եղանակներ, մարգագետիններ և ծաղիկներ (հմմտ. Zimm. ՀԱ. 1900, էջ 225–6)։

Այս գեղարուեստը Կապադովկիա մտած կրնար ըլլալ երկու ճամբով, մին Հռոմէն անցնելով Վոսփոր՝ Կոստանդիանոսի Նոր-Հռոմը և անկէ Փոքր Ասիա, և միւսը՝ քաղաքակրթութեան և գեղարուեստի արեւելեան մեծ կեդրոնէն՝ Աղեքսանդրիայէն, որ իր բարունակները տարածեց մինչեւ Ալիս՝ Ասորիքի ճամբով։

Ասոր համար Կապադովկեան նկարներու մէջ թէ՛ Բիւզանդական և թէ՛ յունական-եգիպտական ազդեցութիւնը որոշ կը նշմարուի (Նոյն), մասնաւորապէս այն արուեստին մէջ որ կը ծաղկի Կոստանդիանոս Մեծէն մինչեւ Յուստինիանոս, այն շրջանին երբ Կապադովկեան Եկեղեցին իր փառքին և շքեղութեան մէջ է։

Յուստինիանոսէն ետքը եկաւ անկումը, յետոյ Պատկերամարտութիւնը՝ որ վանականներու նկարչութեան արուեստը խափանեց։ Յետոյ եկան Սելջուկեանք՝ որ դալարի վերջին ցողունն ալ ոտնակոխ ըրին, և չթողուցին որ երեւան գան նոր շինութիւններ, նոր եկեղեցիներ և նկարներ։

Պատկերամարտութիւնը որոշ է թէ խորապէս կը ցնցէր Կապադովկեան Եկեղեցին ուժգնօրէն հարուածելով անոր գլխաւոր ոյժը՝ վանականութիւնը։



Կեսարիոյ միւզէին մէջ պահուած շատ կարեւոր եւ Նրբարուեստ Բիւզանդական Եկեղեցւոյ վէմ քար մը:

Այս շարժման հետ զուգընթաց և անոր պէս ներքին ուժասպառութեան պատճառ աղանդ մըն էր Պաւղիկեանութիւնը, որ Է. դարուն

վերջը բաւական բազմաթիւ հետեւորդներ ունէր իրեն Հայաստանի, Կապադովկիոյ և Պոնտոսի մէջ։

Սեղուանոս (կամ Սիլվէյն = Silvain) սարկաւագ, իրենց առաջին առաքեալը, իր բնակութիւնը հաստատած էր Ա. Հայոց Կողոնիա քաղաքը Գայլ (Lycus) գետին վրայ, Նէոկեսարիայէն վար։

Անոնք պետական օրթոտոքսութեան հանդէպ՝ կը պաշտէին Ս. Գիրքին ճշմարիտ քրիստոնէութիւնը։

Է. դարուն կայսրներու ժամանակ հալածուելով, պատկերամարտ կայսրերու խելացի քաղաքականութեան բերմամբ բաւական լայն ազատութիւններ ստացան։

Անոնք պետութեան արեւելեան սահմանագլուխին վրայ Տաւրոսի և Եփրատի արեւմտեան կողմը հաստատուած արաբներու դէմ ուժ մը կը ներկայացնէին, քաջ զունդեր կազմած, կենդանի ամրութիւն մը հանդիսանալով։

Սակայն պատկերապաշտ կայսրերը, ինչպէս Միքայէլ Ա. և Լեւոն Ե. սկսան ասոնք ալ հալածել, այնպէս որ անոնցմէ կարեւոր մաս մը անցաւ արաբական սահմանները։

Սիմէոն անուն զօրավար մը որ այս աղանդին վերջ տալու պաշտօնով ղրկուած էր Սեղուանոսը ձերբակալեց, աղանդաւորները գերեց և խոշտանգանօք ստիպեց որ իրենց պետը քարկոծեն, բայց անոնց արիական դիմադրութենէն ազդուելով ինքն ալ անոնց յարեցաւ։

Պաւղիկեանք զօրացան և հալածանքին դէմ զինեալ ապստամբութեան դիմեցին և Տրապիզոնի մօտ լեռնագաւառներուն մէջ՝ անոնք նոյնիսկ իրենց սեփական հանրապետութիւն մը հիմնեցին։ Միւս կողմէն արաբներէն օգնութիւն խնդրեցին Բիւզանդիոնի դէմ և ստացան՝ վասնզի արաբական շահերուն հաշտ էր տկարացնել Բիւզանդական կայսրութիւնը։

Սակայն ամենահաւատացեալ կայսրերը չունեցան նրբամտութիւնը զանոնք մեղմ միջոցներով շահելու, այլ ընդհակառակը սոսկալի հալածանքեր գործադրեցին։

Պաւղիկեանց դէմ, ինչպէս տեսնուեցաւ, (տես վերը, էջ 307–309) ամէնէն գլխաւոր հալածանքը գործադրեցին Թէոդորա կայսրուհին երբ իբր խնամակալ Միքայէլ Գ. Արբշիռ կայսեր (842-867) կայսրութիւնը կը վարէր անսովոր կորովով մը, և Վասիլ Ա. (868–886) որ ամէնէն անգութ միջոցները կիրարկեց վերջ տալու համար անոնց հասարակապետութեան և աղանդին (տես վերը, էջ 309-311)։

Սակայն այս աղանդը մինչեւ իր ջնջումը աղէտալի ներգործութիւն մը ունեցաւ Կապադովկիոյ Եկեղեցւոյն հեղինակութեան վրայ, վասնզի իր Թեմականներէն էին անոնք մեծ մասամբ և անոր կեդրոնին մէջ իսկ՝ Արգէոսի շուրջը հաստատուած, կը հարուածէին Մայր եկեղեցին կամ ուղղափառ օրթոտոքսութիւնը։

Այնպէս որ Կապադովկեան Եկեղեցին մէկ կողմէն ենթակայ արաբական սարսափին և ներքին խռովութիւններու շփոթին, միւս կողմէ ներքնապէս պառակտուած, անշքացաւ և կորսնցուց իր նախկին նշանակութիւնը։

Անշուշտ տակաւին Ը. Թ. և նոյնիսկ Ժ. դարուն կը լսենք Կապադովկեան լուսաւորեալ և ոգելից եպիսկոպոսներու անունները, ինչպէս Փիլալեթէս, Կիրակոս, Եւսքեմոն և Պրոկոպ։



Նոյնիսկ կը լսենք որ 886ին «Նախաթոռ» (πρωτόθρονος = պռոտոթրոնոս) տիտղոսը կ'առնէ Ստեփանոս, տիտղոս մը զոր մինչեւ այսօր ալ կը պահեն Կեսարիոյ յոյն եպիսկոպոսները։

Սակայն ծաղկման շրջանը անցած էր, վասնզի այդ ժամանակամիջոցին մէջ որ Յուստինիանոսէն մինչև Կոստանդին Ծիրանածին կը հասնի, երբ արտաքին պատերազմը կը դադրէր, ներքին խռովութիւններ կը ծագէին և աստուածաբանական վէճերը կը խռովէին երկիրն ու արեւելեան Եկեղեցին, որ ինչպէս տեսնուեցաւ արդէն միշտ տառապած է աղանդաւորական պայքարներով, ինչպէս Մոնտանեաններու, Մանիքեցիներու և Պաւղիկեաններու շարժումներով, ամէնքն ալ ծնունդ արեւելեան անհանդարտ և խուզարկու մտքին։

Այնպէս որ Հայկական հարստութեան վարիչներուն և գերազանց զինուորական առաջնորդներուն՝ Ռոմանոս Բ.ի (959–963), Նիկեփոր Փոկասի (963–969) և մանաւանդ Յովհաննէս Զմշկիկի և Վասիլ Բ. Պուլկարոպանի (976–1025) զինուորական փառայեղ յաղթանակները որոնք կ'ընկճէին ու կը սարսափեցնէին կայսրութեան դարաւոր հակառակորդը՝ իսլամը՝ և անօրինակ փայլ ու ոգեւորութիւն կուտային Բիւզանդական կայսրութեան, անոր պատմութեան ամէնէն պանծալի էջերը հիւսելով, չկրցան Կապադովկեան քայքայուած և ընկճուած Եկեղեցիին հին փայլը և ոյժը դարձնելու։ Աղանդաւորական շարժումներ և դաւանաբանական վէճեր արդէն շատոնց ջլատած էին այն հզօր ոյժը որ Եկեղեցին կը ներկայացնէր իր տակաւին չպառակտուած օրերուն։

Հակառակ անոր որ Կապադովկիա շնորհիւ Հայերուն՝ որոնք Արեւելքէն արշաւող բարբարոսներուն կուրծք կու տային կը մնար խաղաղութեան մէջ, չկրցաւ վերակազմուիլ և իբր մտաւորական և կրօնաւորական կեդրոն կատարել իրեն վերապահուած դերը, և խաղաղութեան բարիքներէն օգտուիլ։

Եւ երբ իսլամական լուծին ենթարկուեցաւ երկիրը՝ երբեմնի քրիստոնէական վառարանը միայն անցեալ փառքի մը յիշատակին վերածուած էր։

---

## Բ.

# ՀԱՅՔ 'Ի ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**( 395 — 1067 )**

---

## Ա.

## ԱՃՈՒՄՆ ՀԱՅԱԲՆԱԿՈՒԹԵԱՆ ԵՓՐԱՏԻ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿՈՂՄԸ

Հռոմէական տիրապետութեան շրջանին արդէն մեծ թուով Հայեր գաղթած էին դէպի Կապադովկիա և Փոքր Ասիոյ ուրիշ մասերը, ինչպէս տեսնուեցաւ, մանաւորապէս այն պատճառով որ Հայաստան զուրկ էր արտաքին և ներքին անդորրութենէ։

կապադովկիոյ՝ Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուած վեց դարերու շրջանին Հայաստանի մէջ տիրող կացութիւնը ո՛չ միայն չէ բարեփոխուած այլ նոյնիսկ կարգ մը շրջաններու մէջ աւելի վատթարացած է, այնպէս որ գաղթին պատճառները գոյութիւն ունենալէ չէին դադրած, որով նաեւ չէ կանգ առած՝ Հայոց գաղթը։

Գլխաւորապէս Հայաստանի բնակչութեան տեղափոխութիւնը չեչտուեցաւ Ե. դարուն, յատկապէս 451էն յետոյ, երբ պարսիկները քրիստոնեայ Հայաստանի դէմ կիրարկել սկսան աններող քաղաքականութիւն մը,

Հայերը, որոնք յոյս ունէին օգնութիւն գտնել այն մեծ պատերազմին մէջ որ Պարսկաստանի կրակապաշտութիւնը բացաւ քրիստոնեայ Հայաստանին դէմ, ո՛չ միայն իրական օգնութիւն մը չստացան Բիւզանդիոնէն, այլ մինակ ձգուեցան իրենց թշնամիներուն դէմ, որոնց պատճառած անտանելի նեղութիւններէն ստիպուեցան հետզհետէ թողուլ իրենց հայրենիքը և աշխարհի ամէն կողմերը ցրուիլ։

Բիւզանդական կայսրութիւնը իբր ամէնէն մերձաւոր քրիստոնեայ երկիրը, պարսիկ արեւապաշտութեան հալածանքներէն ազատելու համար կը ներկայացնէր ամէնէն յարմարագոյն վայրը, մանաւանդ տակաւին Քաղքեդոնի ժողովին շուրջ ստեղծուած տարակարծիքութիւնը գոյութիւն չունէր և բռնութիւնները որոնք վերջէն գործադրուիլ սկսան Բիւզանդացւոց կողմէ տակաւին սկսած չէին։

Է. դարու կէսէն յետոյ երբ արաբները Հայաստանի հողին վրայ ոտք դրին և սկսան իրենց տնտեսական ճնշումները և հալածանքները, որոնք նուազ դառն և անհանդուրժելի չէին քան պարսկականը, Հայերը դարձեալ իբր փրկութեան կայան դիմեցին դէպի Եփրատի արեւմուտքը տարածուած երկիրները, հակառակ անոր որ դառնացած էին Բիւզանդիոնի դէմ։

Մասնաւորապէս Հայաստանէն դէպի Բիւզանդական երկիրներ գաղթը մեծ համեմատութիւն առաւ, երբ Հայերը քաջալերուած Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի արաբներու դէմ Փոքր Ասիոյ մէջ տարած մի քանի յաղթութիւններէն և Ումեանց և Աբբասեանց ներքին պառակտումներէն անխոհեմութիւնը ունեցան ապստամբելու (748–750) և սակայն չարաչար պատժուեցան Աբբասեաններէն՝ որոնք 750ին յաղթական՝ միահեծան տէր դառնալէ յետոյ Արաբ պետութեան, խստութեամբ պատժեցին բոլոր ըմբոստացած նահանգները, ի մէջ այլոց Հայաստանը՝ որ անօրինակ անգթութեանց թատերավայր եղաւ երկու տարի (750–752)։ Կոստանդին Է. Կոպրոնիմոս թէև առաջաւ 752ին մինչև Հայաստանի սիրտը՝ Կարին, սակայն արաբները ո՛չ միայն գրաւեցին վերստին Հայաստանը այլ Մելետինէն առնելով անցան Եփրատը և մտան Կիլիկիա և Մելասի(1) ճակատամարտը շահեցան (760) Արմենեակ (Armeniac) ստրադետ (strategus) Պօղոսի դէմ, որ այս պատերազմին մէջ մեռաւ։ Բիւզանդական բանակը ունեցաւ ծանր կորուստներ և 42 գլխաւոր սպաներ գերի ինկան արաբներու ձեռքը (տես Noël des Vergers, «Arabie», Paris, 1847, էջ 363, E. W. Brooksի Սարակինոսներու դէմ պայքար յօդուածը. տես Cambridge Med. Hist. Դ. հատոր, էջ 122)։

(1) Մելաս կը գտնուէր Մալաթիոյ և Կեսարիոյ միջեւ (Cambridge Med. Hist. Դ. հատ. էջ 122)։



Այս պարտութիւնը բարոյալքեց Հայերը, որ արաբներու վրէժխնդրութենէն խոյս տալու համար ձգեցին իրենց հայրենիքը և անցան յունական երկիրներ։

Այս գաղթը շարունակական հանգամանք առաւ յաջորդ հարիւրամեակին երբ Հայերը գրեթէ անպաշտպան մնացին արաբական խըժդըժութեանց դէմ։

Այդ տեղափոխութիւնները շարունակուեցան նոյնիսկ 859էն, այսինքն Բագրատունեանց կէս անկախ իշխանութեան կազմութենէն յետոյ, գոնէ յամրօրէն, տկարացնելով և ուժասպառ ընելով երկիրը, որ որքան՝ իր անկախութիւնը ստացած, արաբական սարսափէն չէր ազատած և յաճախ ոտնակոխ կ'ըլլար արաբ ոստիկաններու բանակներէն, և կ'ենթարկուէր կեղեքումներու և տեսակ տեսակ սարսափներու։ Այս անապահովութիւններէն խոյս տալու համար Հայերը կը գաղթէին գունտագունտ Բիւզանդական երկիրներ։

Իսկ երբ արաբները տկարացան Թուրանեան ժողովուրդներու Ասիոյ խորքերէն դէպի արեւմուտք խուժումով և գաղթաշարժով, Հայերը, ահաբեկ այս բարբարոս ժողովուրդներու վայրագ յարձակումէն, ո՛չ միայն ապաւինեցան օգնութեանը, արաբներու տկարանալէն օգտուելով մինչեւ Հայաստանի սահմանները ընդարձակուած Բիւզանդական կայսրութեան, այլ նաեւ անոր երկիրները գաղթեցին։

Վասիլ Բ. կայսրը (976-1025) որուն օրով Բիւզանդական կայսրութիւնը նոր փայլ մը կ'ստանար, իրեն ապաւինող Հայերը քաջալերեց, անոնց տեղեր տուաւ, նենգ դիտումով մը որ Հայերը հասկնալէ հեռու էին։ Անոր նպատակն էր ջնջել և տկարացնել Հայկական իշխանութիւնները, որպէսզի Հայերը օրթոտոքսացնել դիւրին ըլլար, իսկ Հայ իշխանութեանց ջնջումէն յետոյ Հայերը տեղափոխեց որպէսզի օրթոտոքս զանգուածներու մէջ անոնք սուզուին և անոնց տեղը փորձեց լեցնել Պուլկարներ։

Վասիլ Բ.ի այս քաղաքականութիւնը իր խորքին մէջ ահարկու սխալ մըն էր որ իր աղէտալի հետեւանքները ունեցաւ թէ՛ Հայաստանի և թէ՛ Բիւզանդիոնի համար, վասնզի Հայ իշխանութեանց ջնջումը ի վերջոյ անխուսափելի դարձուց՝ Հայաստանի ոտնակոխումէն յետոյ՝ բարբարոսներու Բիւզանդական երկիրներն ալ մտնելը, հակառակ Վասիլի ձեռք առած կանխահոգ միջոցներուն և իր յաջորդներուն ջանքերուն, որոնք մինչեւ 1042 հազիւ զօրեցին տոկալ թշնամիներու յարձակման, շնորհիւ բնիկ տարրերու անձնուիրութեան։

Ու Բիւզանդիոն դէմ առ դէմ եկաւ բարբարոս Արեւելքին, երբ արդէն քանդուած էին Հայկական բարձրաւանդակին պատուարները՝ Հայ անկախ պետութիւնները, որոնք այնքան եռանդով պաշտպանած էին իրենց երկիրը։

Յոյները գձուձ հաշիւներով և տխմարութեամբ ո՛չ միայն քանդեցին այդ գեղեցիկ ամրութիւնները կայսրութեան պաշտպանութեան այլ նաեւ խնայողութեան անունով արձակեցին 50,000 հայ և վրացի զինուորները որոնք երկիրը կը պաշտպանէին (Դելցեր, էջ 287)։

Այս պատճառով իրաւամբ ամբաստանուած է Կոստանդին Մոնոմախոս, որ կայսրութեան պաշտպանողական ուժը պակսեցնելով Փոքր Ասիոյ մէջ, անոր դուռները բացած է բարբարոսներու առջեւ (Kékaumenos, Strategicon, 1896, Pétersbourg, գլ. 50. Ատտալիատէս, Պատմ.

Bonn, 1853, էջ 44, 80. Կենտրենոս Բ. էջ 609. Ջոնարաս ժէ. գլ. 28, էջ 647, Կլիկաս, էջ 598) և աւերակ դարձուցած է երկիրը (Փսիլլոս, էջ 240. Ցէքաւմենոս, գլ. 250) զինուորական ծառայութիւնը և տեղական պահակազօրքերը (միլիս) փոխարինելով տուրքով մը։

Յոյները՝ անմտութիւնը ունեցան նաեւ կրօնական հալածանքներով և ծանր հարկերով Հայ ազգին ատելութիւնը գրգռելու և բարբարոսներու գործը այս կերպով եւս դիւրացնելու։

Այսպէս զանազան չիլ հաշիւներով զինաթափ ըրին կայսրութեան արեւելեան սահմանը և պատճառ եղան նոր աղէտներու, ինչպէս շատ լաւ նկարագրած է ժամանակակից ողբասաց պատմագիրը. Արիստակէս Լաստիվերտցի որ Մոնոմախոսի վրայ գրելով կ'ըսէ թէ միշտ «ուտելեաց եւ ըմպելեաց պարապեալ, զազբիւ մեծացուցանէր եւ զպանծս, որ ի հարկաց ամենայն աշխարհաց ժողովէր, զոր պարտէր ի պէտս հեծելոց բաշխել եւ բազմացուցանել հեծելազօրս ընդդէմ թշնամեաց՝ որ զաշխարհս ի խաղաղութեան կարէին պահել յաղթելով թշնամեացն, որպէս առնէր երանելին Վասիլ յիսուն ամ թագաւորեալ, ոչ ոք 'ի թշնամեաց համարձակեցաւ յաշխարհն նորա մտանել. իսկ սա զպանծսն զոր ժողովէր, ի բոզից ծախսն վճարէր եւ ոչինչ ցաւէր նմա աշխարհի աւերումն. . . : Վասն որոյ համարձակեալ թշնամեացն որպէս զայլք փաղչեալք որք յորժամ զտանեն զհօտն առանց պահապանի՝ յանխնայ կոտորեն, նոյնպէս եւ 'ի սորա ժամանակս եղեւ յարեւելից եւ յարեւմտից առհասարակ կործանումն Քրիստոնէից...» (էջ 107–108)։

Ասով հանդերձ պէտք է նկատել թէ մինչեւ Իսահակ Կոմնէնի գահէն հրաժարումը, Բիւզանդական բանակը մնացած է լաւ և իր զօրավարները քաջական (Laurent, Byzance et les Turcs Seldjoucides dans l'Asie Occidentale jusqu'en 1081, Paris 1914, էջ 50-55)։ Սակայն բարբարոսներու ճնշումը այնքան զօրաւոր էր որ Բիւզանդիոնի ջանքերը անբաւական կուգային յաճախ պաշտպանելու Հայաստանը, որուն բնակիչները, ատելով հանդերձ յոյները, նորէն Բիւզանդական երկիրները գաղթել կը պարտաւորուէին, ուր անոնք կ'ընդունուէին և կը տեղաւորուէին և նոյնիսկ կ'ստանային ճորտական իշխանութիւններ, միշտ նենգ դիտումներով, որոնց վախճանական նպատակը ուրիշ բան չէր եթէ ոչ Հայերը հնազանդեցնել Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքին։

Այսպէս վեց հարիւր տարիներու ընթացքին որ Կապադովկիա կը մնար Բիւզանդական կայսրութեան տիրապետութեան տակ շարունակ Պետութիւնը կը լեցուէր Հայերով, որոնցմէ ստուար մաս մըն ալ ապահովաբար բաժին կ'իյնար Կապադովկիոյ, որուն մէկ կարեւոր մասը արդէն Փոքր Հայքի սահմաններուն մէջ մտած էր Հռոմէական տիրապետութեան շրջանին, ինչպէս տեսնուեցաւ, Հայ բնակչութեան թիւին աճումին պատճառով։

Արշակունեանց պետութեան ջնջուելու պահուն ապահովաբար Փոքր Ասիոյ այն մասերը որոնք սահմանակից էին Հայոց պետութեան և բաւական ապահովութիւն կը ներշնչէին պարսից լուծէն հեռու մնալու, լեցուած էին Հայ գաղթականներով։

Եփրատէն անդին մինչեւ Ալիսի և Ցիհանի հովիտները լեցուն էին խիտ Հայ բնակիչներով, և նոյնիսկ Դ. դարուն վերջերը Սեբաստիա և Սատաղ, ինչպէս նաեւ Մելետինէ և իր անմիջական շրջակայքը, կը համարուէին մաս Հայաստանի որուն աշխարհագրական սահմանները այսպէս կ'ընդարձակուէին Եփրատէն Արեւմուտք։

Այս Հայերը գրեթէ երկրին բնիկները դարձած և կրօնական անխտրականութեամբ — քանի որ դեռ հակաքաղքեդոնականութիւնը սուր երեւոյթ չէր առած — տեղական տարրերու հետ խառնուած, ծնունդ տուած էին Հայ-Հռոմ տարրի մը որ յոյները սովորութիւն ունէին Արմենեակներ անունով կոչելու։

«Յուստինիանոսի օրէն իսկ, անընդհատ պատերազմներով եւ համաճարակներու բռած կոտորածով՝ մինչեւ Հերակլ կայսեր եւ իր յաջորդներուն Պարսկաց դէմ արիւնահեղ սպառիչ ողորումներուն հետեւանօք Բիւզանդական կայսրութեան բնակչութեան անօսրանալը դուռ կը բանար Հայ տարրին՝ մուտ գործելու կայսրութեան սահմաններէն ներս: Հայ մարդավարժ նախարարներ, ազատանի իրենց զօրականներով, հետեւորդներով, շինականներով կու գային հաստատուիլ Արմենեակ եւ Անատօլիկ բանակաթեմերուն հողերը: Հայաստան ամէնէն արդիւնաւոր հողն էր զօրք հաւաքելու համար, եւ ամէնէն քաջամարտիկ տեսակէն: . . . . Այս ցեղն էր որ բերաւ Բիւզանդիոնի աւատական իշխողներու ռազմիկ կորովը եւ լեռնցի առոյգ, յամառ եւ գործնական ոգին, ճիշդ այն ատեն երբ ծայրայեղ կեդրոնացումով յառաջ եկած էր անձեռներէց պաշտօնաւորներու մարմին մը, անոնցմէ բոլորովին անջատ եւ գերակայ եկեղեցական դասը, արհամարհոտ եւ աններող ամէն բանի որ ճշդիւ չէր համակերպեր Օրթոտոքսութեան, նախանձոտ հակառակորդ զինուորական ձեռքի մէջ կեդրոնացած խիստ իշխանութեան եւ կայսրութեան սահմանները կոխող թշնամիներու դէմ անընդհատ ողորումէ յոգնած եւ ուժասպառ ժողովուրդ մը: Եւ ահա Հայ ցեղին հոսանքն է որ կու գայ լեցնել պակաս տարրերը, նոր առուգութիւն մը բերել, զինուորական ուժեղ վարչութեան եւ ընդդիմադրութեան յամառոտ ոգիով ամրացնել կայսրութիւնը՝ որուն Ասիական կալուածները այնչափ լաւ կը ճանչնար ան, եւ իբր բնիկ այդ երկրին՝ այնքան սերտիւ յարած էր զանոնք աւերող խուժդուժ անօրէն թշնամիներուն դէմ:

Այս Հայ ցեղն է որ իր բնածին յատկութեան անջնջելի դրոշմը կը տպաւորէ Բիւզանդական կայսրութեան վրայ եւ նոր ջիղ ու արիւն անոր պարտասած մարմնին՝ կ'երկարէ անոր կեանքը դարերով, մինչեւ որ կարելի կ'ըլլէ Կոմնենոսներու եւ Պալէոլոգներու միջոցաւ վերարծարծումը, դեռ իբր 530 տարիներ մըն ալ տեւել տալով «Ռում» իշխանութիւնը:

Բայց Հայ թանկագին արիւնի այս անվերջ նորոգումը՝ իրկաւէտ՝ արիւն չձգեց ներմրկեց Մայր-Հայրենիքի երակները: Նոր ըսենք, մէկ դասակարգին, քանի մը հարիւր ընտանիքի, քանի մը հազար հոգիի տեղափոխութիւն չէր աս, անընդհատ եւ յարաճուն հոսանք մըն էր ներգաղթի: Բիւզանդական կայսրութեան նորագոյն պատմիչներէն Prof. Պիւրի, «ԿԷՍԷՆ ԱՒԵԼԻ, բնակչութեան տեղը բռնեց» կ'ըսէ, համեմատութիւն զոր ըմբռնել կը դժուարի մարդ(1): Եւ եթէ նոյնիսկ մօտաւորապէս ուղիղ ըլլայ աս, շատ բան կը բացատրէ հողին վրայ մնացողներուն Հայաստանի անկախութիւնը պահպանելու դժուարութեանց եւ ներսական նիզերուն նկատմամբ: Չափազանցութիւն մը պիտի չըլլար հաւաստել թէ Ե. դարէն ետքը Մեծ-Հայք կրնար գտնուիլ Եփրատի ակունքն ու Արեւելք, բայց մեծ Հայերը կը գտնուէին Արեւմուտք՝ Բիւզանդական կայսրութեան մէջ» Գառնիկ Ֆնտգլեան, *Ամենուն Տարեցոյց*, 1926, էջ 362–3):

Հայեր կային մեծ թուով Զ. դարուն մայրաքաղաքին՝ Բիւզան-

(1) W. E. Boussell. The Roman Empire from Domitian (81 A. D.) to Nicephorus III (1081 A. D.) London, 1910, tome II. էջ 465)։

գիոնի մէջ իսկ, և կը կազմէին առանձին հասարակութիւն մը, խմբուած չուրջը Այ-Սոֆիային, որուն մէկ դուռը «Հայոց Դուռ» կը կոչուէր, և բովանդակ կայսրութեան մէջ տարածուած էին (Դելցեր, Pergamon unter Byzantinern und Osmanen, ուրկէ հատուած մը թարգմանուած է հայերէնի. ՀԱ. 1907, էջ 225)։ «ԱՅՍՕՐՈՒԱՆ ՊԷՍ ՆՈՅՆ ԱՏԵՆ ԱԼ ԳԼԽԱՒՈՐ ՔԱՂԱՔՆԵՐԷՆ ՇԱՏԵՐԸ ՀԱՅ ԳԱՂՈՒԹ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ ՈՒՆԷԻՆ» (Դելցեր, Նոյն)։

Պատերազմասէր Հայոց ամէնէն արկածախնդիր որդիները կը դիմէին Բիւզանդիոն, ոմանք փախչելով մահմետական հալածանքներէ կամ ցեղային կռիւներէ, իսկ այլք բախտ որոնելու՝ կայսրութեան երկիրներու մէջ։ Անընդհատ յարաբերութիւն կար Բիւզանդիոնի և Հայաստանի միջեւ և միշտ տեղափոխութիւն բնակչութեան դէպի Բիւզանդական երկիրներ, որուն մանաւորապէս Եփրատամերձ հողերը կը լեցուէին Հայերով։

Զ. դարուն Պրոկոպիոս Մելետինէն զուտ Հայ քաղաք մը նկատէր։

Է. դարուն Մելետինէի և Կապադովկեան Կեսարիոյ միջև տարածուած լեռնային շրջանակը հայաբնակ երկիրներու ծիրին մէջը կը համարուէր։

Մանաւորապէս Կապադովկիոյ շատ ստուար Հայ բնակչութիւն մը ունենալը և նոյնիսկ երկրին Հայաստան նկատուիլը կը հաստատէ գրող մը՝ հակահայ նախապաշարեալ յոյն մը (Sathas, Les exploits de Digenis Akritas, Paris. 1875, էջ LXIX) որ դէպի 800ական թուականներուն գրած է թէ Հայերը «յոյն կայսրութեան միացած տարրերը, գրաւած էին Կապադովկիան, հոն հիմնած էին զինուորական գաղութներ եւ նուաստացնելու համար ազգային տարրը հարկադրած էին իրենց անունը բոլոր նահանգին»:

Այս չարամիտ ոգիով գրուած տողերը շատ հեռու չէին ճշմարտութենէ։

Հայերը Հայաստան չինած էին այդ հողերը և Ժ. դարուն առաջին կիսուն, Կոստանդին Ծիրանածինին գահակալութենէն մինչեւ Նիկեփոր Փոկասի իշխանութիւնը յափշտակելը, յիսնամեայ շրջանին (913–963) Փոքր Ասիոյ մէկ ծայրէն միւսը, Հայաստանէն մինչեւ Բիւզանդիոն տարածուող բոլոր քաղաքներու մէջ առհասարակ հաստատուած էին Հայերը, Հայաստանի սահմաններուն մօտ հողամասերուն վրայ շատ աւելի ստուարաթիւ և հեռուները աւելի նօսր։ Այս պատճառով է որ ապահովաբար նոյն դարուն ապրող յոյն պատմագիր Կենդրենոս ո՛չ միայն Կապադովկիոյ այլ նաեւ Պոնտոսի համար «Հայաստան» բառը կը գործածէ, երբ այլեւս գործածութենէ դադրած էին բոլոր Փոքր Ասիոյ հայկական յորջորջումները քաղաքային բաժանումներուն և Արմենեակներու զինուորական բանակաթեմը դադրած էր գոյութիւն ունենալէ, հակառակ որ Բիւզանդական կայսրութեան Ասիական գաւառներու բնակչութեան իսկական մեծամասնութիւնը Հայեր էին։

Կոստանդին Ծիրանածին (Թեմուրայք, էջ 19) նոյնպէս Ժ. դարուն ինքն իսկ կը հաստատէ թէ Կողոնիոյ երկիրը (Գայլ կամ Լիւկոս գետին հովիտը) բնակուած էր Հայերէ, և Կեսարիոյ և Մելետինէի միջեւ գտնուող Լիկանտոս քաղաքը, ի վաղուց հետէ հայկական քաղաք



մըն էր և որուն անունն իսկ կը հաստատէր ազգութիւնը (Նոյն, էջ 33)։

Պոնտոսի— որուն մասը կրնայ համարուիլ Կողոնիան — հայացումը նաեւ կը հաստատուի Ռոմանոս Լեկաբենոս կայսեր (920-944) ժամանակ պատահած պոնտական ապստամբութեան մը փորձէն, որուն գլխաւոր դերակատարները Հայերն էին։

Խաղդիքի և Պոնտոսի կառավարիչն էր այն ատեն Վարդան Վուզ կամ Վարդ Բոյլ որ տեղացի Հայ հարուստներու ապստամբելու խորհուրդ կու տայ՝ խոստանալով ամէն օգնութիւն զոր իր պաշտօնին շնորհիւ կարող էր ընձեռնել իրենց։

Քիչ յետոյ հարստութեամբ մեծահռչակ Հայ վաճառական մը, Տաճատ «Ճանճ» Բաբերդցի, Ադրիանոս Խաղդիացիին հետ միանալով յարձակեցաւ Բաբերդի վրայ, տիրեց անոր և ամրացաւ հոն։

Հայաստանի անմիջական դրացի շրջաններուն մէջ Հայերու այսքան մեծ թիւ մը ունենալը երբեք պէտք չէ զարմանալի թուի, երբ արդէն Բիւզանդական պետութեան մէջ Հայերը կէսէն աւելին կը կազմէին։ Եւ ինչպէս պատմութիւնը կը հաստատէ Հայերը դժբախտ պարագաներու բերմամբ, միշտ կը շարունակէին գաղթել յունական երկիրներ, ինքնաբերաբար կամ Բիւզանդական պետութեան քաջալերութեամբ, մանաւորապէս իրենց զինուորական արժանիքներուն համար — որոնք միշտ գովուած են — հողեր և իշխանութիւններ ստանալով։

Այն սոսկալի և երկարատև պատերազմներուն ատեն, որ Ժ. դարուն վարեցին Նիկեփոր Փոկաս և իր յաջորդը՝ Զմշկիկ (969–976) կայսրերը Կիլիկիոյ և Ասորիքի մէջ, անոնք սուրէ անցուցին, գերեցին և աքսորեցին մահմետական բնակիչները, Հայերուն տուին անոնց հողերը, վասնզի Հայերը այդ կռիւներուն մէջ ուշագրաւ դեր կատարեր էին (տես, Ն. Քարամեան, Յովհաննէս Զմշկիկ կամ Կիւռժան Բիւզանդական Հայ կայսրներից մէկը. ԼՈՒՄԱՅ, 1899, Բ. Գիրք, էջ 58)։

Այսպէս կը յիշուի թէ 962ին երբ Յովհաննէս Զմշկիկ — տակաւին Արեւելեան բանակին հրամանատար — կ'երեւի Հայոց պետութեան սահմաններուն վրայ և մերձակայ արաբ երկիրները կը նուաճէ, շատ Հայեր Բիւզանդական կայսրութեան երկիրները կ'ապաստանին։ Անոնց կը տրուի Սեբաստիոյ նահանգը և արաբներէ նոր առնուած Եփրատացւոց շրջակայքը գտնուող ամրոցները, ինչպէս Մամբրճ, Տրլուք (Այնթապի մօտ) և այլ (տես, Les Hétéens. Histoire d'un empire oublié par A. H. Sayce. 1891, Paris, էջ 250)։

Երբ Սուրիական Կեսարիան կամ Chaizarը (Որոնդէս գետին վրայ) կը լքեն արաբները, չուզելով քրիստոնեայ տիրապետութեան ենթարկուիլ, Վասիլ Բ. կայսրը հաւատարիմ հետեւող Զմշկիկի քաղաքականութեան կամ աւելի ճիշդը Բիւզանդական պետութեան ընդգրկած ուղղութեան, այս փախստականներուն տեղ կը բերէ կը տեղաւորէ 999ին Հայ գաղթականներ որոնք վերստին կը ծաղկեցնեն քաղաքը (G. Schlumberger. «L'Epopée Byzantine à la fin du dixième siècle» Paris, Բ. հտ. էջ 151)։

Ժ. դարուն անցքերուն վրայ խօսելով Միքայէլ Ասորի (Գ. էջ 198) կը հաստատէ այս իրողութիւնը, ըսելով թէ «Այդ դարում երբ յոյները կը գրաւէին արաբներէն Կապադովկիոյ, Հայաստանի (իմա՛ Փոքր Հայք) եւ Սուրիոյ

մէջ քաղաքներ, կը քակէին եւ կը բերէին Մեծ Հայաստանէն ժողովրդեան բազմութիւն մը: Անոնք կը հաստատուէին այդ տեղերը եւ կ'անէին», *և ինչպէս տեսնուեցաւ նոյնիսկ կ'ստանային հողային ստացուածքներ։*

*Իսկ ԺԱ. դարուն, երբ ասպարէզ կու գան Թուրք ասպատակները, վայրենի ու գազանաբարոյ այս ժողովուրդները, և Հայաստանի արեւելեան կողմը կը հասնին, ճեղքելով Կեդր. Ասիայէն մինչեւ հոն տարածուած երկիրները, Հայերը դարձեալ կ'ապաւինին Յոյն կայսրութեան երկիրները, ուր այս անգամ կը գաղթեն զանգուածներով։*

*Հազիւ բարբարոս Սելջուկներու առաջին հարուածներ Հայաստանի արեւելեան ծայրագաւառին, Վասպուրականի վրայ զգալի եղած, Սենեքերիմ Արծրունի*(1) *թագաւորը* (1003–1026†) *վախկոտ և վայրագ ցեղերու կողմէ գործադրուած արշաւանքներէն տագնապած և հրապուրուած Վասիլի զօրութենէն, որոշեց իր երկիրը յոյներուն ընծայել և ժողովուրդին հետ գաղթել յունական երկիրներ* (1016)։

*Իր Դաւիթ որդին Կ. Պոլիս եկաւ այս առաջարկը Վասիլ Բ.ի ներկայացնելու համար։ Վասիլ ընդունեց, հաւանօրէն իր մտադրութեանց համաձայն գտնելով զայն։ Յոյն ժամանակակից պատմագիր՝ Կետրենոսի համաձայն Սենեքերիմ յունական հողեր կ'անցնէր* 400,000 *հպատակներով, տալով Վասիլի* 10 *քաղաք*, 1000 *գիւղ և* 72 *բերդ*(2)։

*Օտար պատմագիրներէն Միքայէլ Ասորի որ ժամանակով շատ ուշ չէ, վասնզի հազիւ հարիւր տարուան շրջան մը զինքն կը բաժնէ այդ տեղափոխութեան ատենէն, կը պատմէ* «1301ին (=990) սկսաւ Հայոց զօրքը Մեծ Հայքէն եւ ամէնէն առաջ Կապադովկիոյ երկրէն: Եւ Վասիլ կայսրն է որ Հայոց ձեռքէն առաւ Սենեքերիմ թագաւորին երկիրները եւ անոնց փոխարէն տուաւ Կապադովկիոյ Սեբաստիան: Հայերը բազմացան այս կողմերը եւ անկից է որ տարածուեցան բոլոր Կապադովկիա, Կիլիկիա եւ Ասորիք» (Chronique de Michel Le Syrien. Patriarche Yacobit d'Antioche (1166–1199), Editée pour la primière fois et traduite en Français par J. B. Chabot. Paris. 1905, *Գ. հտ. էջ* 133)(3)։

*Այս տեղափոխութեան յիշատակութիւնը կ'ընեն նաեւ Հայ պատմագիրները ժամանակագրական կարգով Լաստիվերդացի* (*էջ* 20),

(1) *Սենեքերիմ Արծրունի* 1002*ին երբ Վասիլ Բ. Հայաստան եկած էր Կարուց Աբաս թագաւորին և իր երէց եղբօրը Գուրգէնի հետ կայսեր այցելած և հպատակութիւն պէտք է յայտնած ըլլայ։ Վասիլ մեծամեծ պարգեւներով պատուած է զանոնք* (*Դուրեան*, Ազգ. Պատմ. *էջ* 367)։

(2) *Հայ պատմագիրները ունին տարբեր թիւեր, ինչպէս* 8 *քաղաք*, 72 *բերդ և* 4000 *գիւղ կամ* 12 *բերդ և* 4400 *գիւղ* (Ազգապատում, *էջ* 1198)։

(3) *Հայերէն թարգմանութեան մէջ որ համառօտութիւն մըն է այս հատուածը չկայ սակայն սա տողերը կան որոնք կը հաստատեն նոյն իրողութիւնը* «Առաջագոյնն Հայոց, որ յառաջ Վասիլի կայսեր եկեալ էին ի Վասպուրականէ եւ բնակեալ ի Սեւաստ եւ ի Կեսարիա եւ ի Խաւատանէն, եւ բնակեցեալ ունէին զբազում տեղիս» (*տես* Ժամանակագրութիւն Տեառն Միխայէլի Ասորւոյ Պատրիարքի. *Երուսաղէմ*, 1871, *էջ* 411)։ *Ֆրանսերէն թարգմանութիւնը պիտի յիշեմ* Michel le Syrien *ձեւով զատելու համար հայերէնէն։*



*Ուռհայեցի* (*էջ* 57-59), *Սամուէլ Անեցի* (*էջ* 104), *Վարդան* (*էջ* 92), *Կիրակոս* (*էջ* 53), *Սմբատ* (*էջ* 46), *Թովմա Արծրունի* (*էջ* 345-6), *և վերջապէս Յայսմաւուրք։*

*Ասոնք ալ կը հաստատեն գրեթէ ընդհանուր համաձայնութեամբ որ Սենեքերիմ ստացած է* «Սեբաստիան եւ որ շուրջ զնովաւ գաւառք» (*Լաստիվերտացի*, *էջ* 20)(1)։



ՎԱՍԻԼ Բ.Ի ԴՐԱՄ
( 995 – 1025 )

*Սեբաստիա, որ կը տրուէր Սենեքերիմի, արդէն կիսահայ բնակչութիւն մը ունէր* (*Գելցեր*, *էջ* 263)։ *Այս գաղթականութեամբ անիկա կը դառնար բոլորովին Հայ քաղաք մը։*

*Յունական նենգութեամբ երբ Բագրատունեանց թագաւորութիւնը և Հայկական միւս իշխանութիւնները հետզհետէ անչքացան և ջնջուեցան, Հայերու դէպի Կապադովկիա խուժումը, կամայ կամ ակամայ աւելի մեծ համեմատութիւն առաւ։ Գիտենք պատմութենէն թէ Յովհաննէս Սմբատ դառնացած Վասիլ Բ.ի դէմ, որ իրեն դէմ հանած էր իր Աշոտ եղբայրը, — անշուշտ Հայ թագաւորութիւնը տկարացնելու դիտումով — դէմ ելաւ Վրաց Գէորգի թագաւորին հետ կայսեր, սակայն չարաչար պարտուելով, պարտաւորուեցաւ ինքն ալ Բիւզանդիոնի գերիշխանութեան ենթարկուիլ և յանձն առնել՝ իր մայրաքաղաքը՝ Անին կտակել յունաց* (1022)։

*Ազգը՝ որուն հաւանութիւնը չէր առնուած այս անխորհուրդ և ազգադաւ կտակը կատարուած ատեն, Յովհաննէս Սմբատի մահէն յետոյ ընդդիմացաւ Անիի յանձնումին, որուն համաձայն կուսակցութիւն մը ստեղծել յաջողած էին յոյները։*

*Վեստ Սարգիս, Բիւզանդական ոսկիէն և նենգութենէն շլացած,*

(1) *Ուռհայեցի որուն* 61 *էջին վրայ ապահովաբար խանգարում մը կայ, թերեւս էջ ինկած ըլլալով, տեղի անունը չի տար, թէեւ յաջորդ էջին վրայ Սենեքերիմի մահուան առթիւ գրուածէն կը հասկցուի թէ անիկա իր հայրենիքէն հեռու մեռած և մարմինը Վասպուրական բերուած է, Վարագ, իր նախնեաց գերեզմանը թաղուելու համար։ Սամուէլ Անեցի նոյնպէս պարզօրէն կ'ըսէ* «էառ զՍեբաստիա իւր գաւառօք»:

*Ժամանակով աւելի ուշ ապրող Վարդան՝ Կինտրենոսի յիշած քաղաքներէն մին ալ կ'աւելցնէ* «զՍեւաստ *և* զԼառիս *և յոլով պռաստինս*» (=*գիւղ*) *յիշատակելով իբր սեպական Սենեքերիմի։*

*Կիրակոս Գանձակեցի Սենեքերիմի տեղափոխութեան մասին մասնաւորապէս չի խօսիր, այլ Հայոց տեղափոխութեան վրայ կը խօսի ընդհանրապէս և կ'ըսէ թէ* «Յոյնք զնացելոցն տեղւոյն երկիրս եւ քաղաքս կալուածոյ զկողմանս Կեսարու եւ Սեբաստու, զոր ես Գագկայն երկուցն թագաւորաց»: *Սմբատ միայն կը յիշէ Սեբաստիան ըսելով թէ* «ելեալ Սենեքերիմ ամենայն տամբ եւ ընտանեօք, եկն ի Սեւաստ»:

*Թովմա Արծրունիի շարունակողը քաղաքի անունը չի տար։ Յայսմաւուրքը՝ որ քաղուածոյ մըն է, կ'ըսէ թէ Վասիլ* «ետ . . . զՍեբաստիա իւր Թեմաւքն եւ զՏամրնդաւ»:

*Հայաստանի մէջ ստեղծեց անախորժ դրութիւն մը և կուսակցական պայքարներ, որոնք նպաստեցին Հայ և Յոյն ատելութիւնը սրելու, վասնզի Յոյն քաղաքականութեան գործիք եղողներուն և անոնց հակառակորդներուն պայքարը տեսակ մը քաղաքային պատերազմի ձև առաւ։*

*Հայրենասէրներ՝ կը մաքառէին Անիի պաշտպանութեան և Հայ քաղաքական անկախութեան համար, մինչ կային ուրիշներ որոնք երկրին յունական տիրապետութեան կը ցանկային։*

*Հայոց մեծամեծները միացան և թագաւոր կարգեցին* 18 *տարեկան Գագիկը, որ ազգային կուսակցութեան պետերէն՝ Գրիգոր Մագիստրոսի հետ յաջողութեամբ կռուեցաւ Սելջուկներու դէմ։*

*Բայց հազիւ թէ Կոստանդին ամրացաւ գահուն վրայ,* 1044*ին նենգութեամբ Գագիկ Բագրատունին կանչեց Կ. Պոլիս և տարի մը յետոյ Յոյները Անին առին։*

*Գագիկ Բագրատունի, Յոյն կայսեր կարգադրութեամբ Կեսարիոյ մօտ Պիզու քաղաքը ստացաւ, իբր հորտ Բիւզանդական պետութեան և պատուաւոր աքսորի մը դատապարտուեցաւ։*

*Բագրատունեանց այս վերջին շառաւիղը որ կը փոխադրուէր Արգէոսի շուրջը, անշուշտ մինակը չէր որ եկաւ հոն հաստատուիլ։*

*Եթէ Սենեքերիմ Արծրունիի պէս ահագին բազմութիւն մը չունէր իր հետը, սակայն անշուշտ ունէր իր հաւատարիմ հետեւորդները, որոնք իրեն հետ պէտք է տեղափոխուած ըլլան Կեսարիոյ մօտերը։*

*Գագիկի տեղափոխութենէն յետոյ ուժերը ջլատուեցան և բնիկ Հայ իշխաններէն շատեր հետզհետէ հեռացան, և ստուարացուցին Հայերու թիւը Բիւզանդական երկիրներու մէջ։*

*Այսպէս Կարսի թագաւորը՝ Գագիկ զգալով իր տկարութիւնը բարբարոսական ահեղ հոսանքին առջև, ինքն ալ իր տէրութիւնը տուաւ Յունաց և փոխարէնը առաւ Ծամնդաւ քաղաքը՝ Արգէոսի ստորոտը և Կիլիկեան Տաւրոսի երկրամասին մէջ , որ շուտով Հայ ազգին համար երկրորդ հայրենիք պիտի դառնար։*

*Այս տեղափոխութիւնը կատարուած պէտք է ըլլայ Անիի գրաւումէն* (1065) *անմիջապէս յետոյ, վասնզի Ուռհայեցի կը գրէ թէ (էջ* 180) *անոր գրաւումէն յետոյ Գագիկ Աբբասեան Կարսի թագաւորին* «յղեաց Սուլտանն... դեսպանս՝ զի զայցէ նմա յերկրպագութիւն»,

*Գագիկ որ* «էր այր հանճարեղ եւ իմաստասէր . . . խորհեցաւ հնարս գերծանել խաղաղութեամբ ի Սուլտանէն», *ուստի* «զգեցաւ սեաւ զգեստ ազատորի եւ նստաւ ի վերայ սեաւ բարձի»: «Յորժամ ետես զնա դեսպանն Սուլտանին, հարցուկ լինէր եւ կամեցաւ զպատճառն ուսանել, «եթէ վասն է՞ր ես սեւոք զի ահա այր դու թագաւոր ես»: *Եւ նա ասէր՝ թէ* «յորժամ մեռաւ իմ բարեկամն Տուղրիլ Սուլտանն՝ եղբայր Աբասլանայ, ես յայնմ աւուր զգեցայ զայս սեաւ զգեստս»: Եւ հիանայր այրն այն եւ երթեալ պատմեաց Սուլտանին եւ նա զարմանայր յոյժ եւ յարուցեալ ամենայն բանակովն եկն առ Գագիկ 'ի Կարս եւ արար ընդ նմա սէր եւ ուրախութիւն մեծ եւ զգեցոյց նմա զգեստ թագաւորական եւ արար Գագիկ ճաշ Սուլտանին: Եւ զայս այսպէս լսեցաք, եթէ մէկ զառին վերայ զոր խոստովանեաց՝ ծախք եհան հազար դահեկան եւ հարիւր հազար դահեկան սեղան տուեալ Սուլտանին եւ ամենայն զօրացն նորա, եւ այսու զերծաւ խաղաղութեամբ» (*Ուռհ. էջ* 180 - 181)։

*Այս պատմութիւնը ընելէ յետոյ պատմագիրը անմիջապէս կը յա-*



*րէ.* «Եւ եղեւ զկնի աւուրցս այսոցիկ թողեալ Գագիկ զԿարս եւ գնաց ի Հոռոմս եւ թագաւորն Տուկիծ ետ նմա զԾամնդաւ եւ անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք եւ թողեալ զտունն հայրենեաց իւրոց» (*Նոյն, էջ* 181)(1)։

*Զարմանալի է որ Ուռհայեցիի հետ ժամանակակից ԺԲ. դարուն ապրող ուրիշ պատմագիր մը՝ Սամուէլ Անեցի առանց ոեւէ մանրամասնութեան* «յորժամ ետես, *կ'ըսէ*, զանհնարին աղէտ կործանման զգլխաւորի տեղւոյս՝ (= Անիի) անձնատուրք եղեալք, ընդ ձեռամբ վիշապին, կամաւ ելին փախստամբ առ կայսրն յունաց եւ նոքա (թուրքերը) տիրեցին ընդհանուր աշխարհիս . . .» (*էջ* 109)։

*Այսպէս վերջացաւ Հայկական իշխանութեան վերջին մնացորդն ալ և* «գերեցաւ տունն Հայոց եւ արեամբ լցաւ առ հասարակ աշխարհն ամենայն որ եւ իբրեւ զծով ծփայր ծայրէ ի ծայր, եւ քակեալ ապականեցաւ հայրենական տուն մեր յեալ, խախտեցաւ հիմն բնակութեան Հայաստան ազգացս, զի ոչ մնաց տեղի յուսոյ ապաւինի, եւ եղաք մատնեալ ի ծառայութիւն ազգաց անօրինաց եւ օտար գազանաց» (*Ուռհայեցի, էջ* 181)։

*Հայաստան և Վրաստան միանգամընդմիշտ կը կորսուէին, և կը մեռնէր Հայաստանի բարձր քաղաքակրթութիւնը։*

*Յոյն պատմիչը՝ Յովհաննէս Սկիլիցէս*(2) *Կիւրապաղատ, իրաւամբ կը դատապարտէ Կոստանդին ԺԱ. Տուկասի անհոգութիւնը և կը ցաւի Ալփասլանէ գրաւուած Անիի և այլ Հայ քաղաքներու կորստեան վրայ և կ'ըսէ.* «ահա յայս վիճակ թշուառութեան հասին սահմանք (Հայոց) որք էին ընդ տէրութեամբ յունաց յԱսիա եւ յամենայն արեւելս» (*Յովհ. Սկիլիցէս, Հջ* 815 *կամ* 637. *Չամիչեան Բ. էջ* 982)։

*Կոնարաս, ուրիշ ժամանակակից յոյն պատմիչ մը, Յովհաննէս Սկիլիցէս Կիւրապաղատի հետ, աւելի իրատես քան պետութեան վարիչները, կը մեղադրէ Տուկաս կայսրը և զինքն շրջապատող ծերակուտականները և ուսումնականները, որոնք անհոգութեամբ թոյլ տուին Հայաստանի ոտնակոխումը և Հայ ազգին անճիտումը, դաւաճանելով Բիւզանդական պետութեան յաւ ըմբռնուած շահերուն, և պատճառ եղան որ ո՛չ միայն Հայաստան այլ նաև Փոքր Ասիոյ մէկ կարեւոր մասը, մանաւորապէս Կապադովկիա, անդարձ կորսուէին կայսրութեան համար։*

*Մինչեւ այն, Արգէոսի շուրջը, որքան ատեն որ կը մնար Բիւզանդական կայսրութեան սահմանին մէջ, լեցուն էր Հայերով, որոնք կը ներխուժէին շարունակ քրիստոնեայ երկիրներ, մանաւանդ արաբական շրջանին։ Անոնց թիւը այնքան մեծ էր որ երկիրը «Հայաստան» կամ «Հայ երկիր» կը նկատուէր, ինչպէս յոյն գրողը զայրոյթով կ'արձանագրէր տակաւին Թ. դարուն սկիզբը (տես էջ* 333)։ *Իսկ շրջանին վերջաւորութեան, այսինքն ԺԱ. դարուն, Հա-*

(1) *Ուռհայեցիէն դար մը յետոյ (ԺԳ. դար) ապրող Հայ պատմագիր մը Սմբատ Գունդստապլ (էջ* 77) *գրեթէ անոր համանման կը պատմէ Գագիկի Ալփասլանի հետ ունեցած յարաբերութիւնները, առանց հացկերոյթին յիշատակութեան, միայն* «արար պատիւ Սուլտանայ եւ զօրաց նորա» *ըսելով։ Իսկ իր ստացած տեղերուն մէջ Ծամընդաւէն զատ կը յիշատակէ Կեսարիան և Խաւտանէքն (էջ* 78)։

(2) Scylitzes *որ Դուրեան կը տառադարձէ Սկիւլիձէս։ Չամիչեանէ յաճախ գործածուած տառադարձութեան հետեւած եմ։*

*յերը* «կը գրաւէին կայսրութեան արեւելեան նահանգները: Կը կազմէին բնակչութեան գրեթէ ամբողջութիւնը Իբերիոյ (հիւսիսային Եփրատի հովիտ) եւ Միջագետքի (հարաւային Եփրատ) թեմերուն որոնք զուտ Հայ երկիրներ էին: Բայց անոնք կը բնակէին նաեւ մեծ թուով Եփրատի արեւմտեան երկիրը, ուր գաղթականներ եկած էին անոնցմէ: Անոնք գրաւած էին Տաւրոսը, Մելետինէի, Սեբաստիոյ, Կապադովկեան Կեսարիոյ, Տարոնի, Հիւսիսային Սուրիոյ եւ Եդեսիոյ երկրին միջեւ»:

«Մելետինէէն Սեբաստիա, Փոքր Հայոց մէջ, Հայերը ամէն տեղ շատ մեծ էին, բայց միջին դարուն անոնք դարձան բացարձակ տէրը այս երկրին (Laureut, Byz· et les Turcs, էջ 67)։

J. Laurent, *համադրական գեղեցիկ պատկերացումով մը կը ներկայացնէ այս տեղափոխութեան շարժառիթները և արդիւնքները, ըսելով թէ* «Հայերը, վերջապէս դադրած էին, արաբ աշխարհակալութենէն սկսեալ, գաղթել մեծ թուով Բիւզանդական կայսրութեան երկիրները: Ոմանք հոն հարստացան, եղան մեծ հողատէր-կալուածատէրներ, հրամայեցին բանակներու եւ նահանգներու, դեր կատարեցին կայսրութեան կառավարութեան մէջ եւ բարձրացան նոյնիսկ. ոչ առանց փայլի, Կ. Պոլսոյ գահը: *Բայց գաղթականներու զանգուածը կը հաստատուէր նախասիրաբար արեւելեան նահանգներու մէջ և Եփրատի մօտը, ընդմէջ Մելետինէի, Սեբաստիոյ և Կեսարիոյ։* Հոն բնակչութիւնը միշտ այնքան զօրաւոր կերպով խառնուած էր Հայերով որ այս շրջանակին տուած էին *Փոքր Հայք* անունը, ինչ որ յետոյ Արմենեակներու կառավարութիւնը եղաւ: Արաբ տիրապետութենէն յետոյ, տեղական արշաւանքները, որոնք կը կատարուէին բոլոր սահմանագլուխին վրայ, երկիրը մեծ մասամբ կը դատարկացնէին:

«Բիւզանդիոն նաեւ հոն կը հաւաքէր բռնի Հայերը որոնք կ'ուզէին հոն հաստատուիլ: Հոն էր նաեւ որ ան հաստատեց, ինքնավար հիմնարկութեամբ եւ իր իսկ պաշտպանութեան համար, Հայ թագաւորները եւ ազնուականները, երբ համոզուեցաւ թէ պարտէր զանոնք հեռացնել իրենց լեռներէն:

«Հոն եկան միանալ բոլոր անոնք որոնք կը հալածուէին Բարձր Հայքէն կամ թրքական հալածանքներով կամ այն բաղձանքով որ անոնք կ'ունենային իրենց հայրենակիցներուն միանալու նոր երկրին մէջ: Հայոց այս շարունակական խուժումը, իրենց պետերուն արկածախնդիր եւ պայքարող ոգին, զանոնք մղեցին տարածել իրենց հաստատութիւնները դէպի հարաւ, Կապադովկիոյ եւ Սիւրիոյ մէջ, Ժ. եւ ԺԱ. դարերուն, յոյներէն վերագրաւուած երկիրները, որոնք անոնք գտած էին մեծ մասամբ անապատ եւ աւերակի վերածուած: Այս նոր Հայաստանին նորական պետութիւնները շատ շուտով իրենց սահմաններուն մէջ առին Մելետինէի, Սեբաստիոյ եւ Կեսարիոյ շրջանակը, գրաւեցին արեւմտեան Տաւրոսի երկու կողերը, յետոյ, Կիլիկիան, Տարոնը եւ Եդեսիան:

Հայ գաղութներ թափանցեցին նոյնիսկ մինչեւ Անտիոք, եւ Որոնդէսի ճամբով մինչեւ Սուրիական Կեսարիա: Քանի մը տարուան մէջ, Հայ-ազգային կազմակերպութիւնը ընդարձակուեցաւ այսպէս նաեւ այն շրջանին վրայ որ կը տարածուի Տաւրոսի, Սիւրիոյ եւ Միջերկրականի միջեւ, որ եղաւ Հայոց համար նոր Հայրենիք մը, ուր անոնց պիտի հետեւէր, կայսեր իշխանութեան տակ, իրենց քաղաքական կեանքը, ինչ որ այնուհետեւ անկարելի էր իրենց ցեղին հին բնակավայրին մէջ:

Անոնք հոն կազմեցին կայսրութեան համար, ընդդէմ թուրքերու, պաշտպանութիւն մը որ պիտի կրնար ըլլալ սոսկալի, եթէ հեմարտապէս բարեկամական գործակցութիւն մը Հայոց եւ Յունաց միջեւ անկարելի եղած չըլլար երկու ժո-



ղովուրդներու խառնուածքին հակադրութեամբը եւ իրենց անցեալ վէճերուն յիշատակովը:

Հայերը շարունակեցին Տաւրոսի մէջ, ներքին պառակտումները, վեանգաւոր կռուազանութիւնը եւ այլամերժ ազգայնականութիւնը, որոնք մինչեւ այն ատեն իրենց տկարութեան եւ դժբախտութեան պատճառները էին:

Անոնք մնացին, յոյն հողին վրայ, քիչ օգտագործելի նորեր, աւելի հոգածու իրենց ազատութիւններուն եւ իրենց անձնական շահերուն քան թէ կարգապահութեան եւ զոհողութեան: Անոնք զգուշացան խնամով Յունաց հետ խառնուելէ: Պահեցին իրենց տարազները, իրենց ճաշակները, իրենց բարքերը, իրենց լեզուն եւ իրենց կրօնը: Անոնք մերժեցին խոնարհօրէն միանալ Կ. Պոլսոյ կրօնական դաւանանքին:

Անոնք կազմեցին, իրենց նոր հայրենիքին մէջ, իրենց հին իշխաններուն կամ յամառ եւ բարեբախտ զինուորներուն շուրջ, խումբեր, որոնք պատերազմեցան սովորաբար, թէ իրենց հին եւ անտրամաբան ազգային աւանդութեան եւ որոնք քալեցին աւելի յաճախ կայսեր դէմ որքան իրեն համար: Բիւզանդական կառավարութիւնը, փորձելով հաստատել իր նորերուն մէջ այս անսրբագրելի բախտախնդիրները, փորձելով ենթարկել Կ. Պոլսոյ պատրիարքներուն հնազանդութեանը այս այլակրօն քրիստոնեաները եւ ջանալով ստիպել հպատակութեան եւ կարգ կանոնի այս խռովարարները եւ կռուասէր նորերը. ուրիշ արդիւնք մը չստացաւ բայց միայն զանոնք աւելի գրգռել իրեն դէմ: Իր յարաբերութիւնները Տաւրոսեան Հայաստանի հետ վերջնականապէս յանգեցան միայն հայթայթելու հայ իշխանապետութեանց մէջ, թանկագին օժանդակներ թրքական արշաւանքին երբ անոնք անցնիլ ուզեցին այս լեռներուն կիրճերը (1071)»: (տես J. Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam depuis la conquète Arabe. jusqu'en 886, Paris, 1919, էջ 4–6)։

*Արդարեւ ինչպէս վերն ալ տեսնուեցաւ, Հայերը՝ յուսախաբ Յոյներէն, որոնք զիրենք կը հալածէին կրօնական պատճառներով, կատարեցին այդ դերը և դիւրացուցին Սելջուկեանց արշաւը, վրէժ լուծելու համար յոյներէն որ զիրենք այնքան հալածած էին։ Եւ իրենց թուական զգալի դերակշռութիւնը որ արդարեւ ունէին արեւմտեան Փոքր Ասիոյ, Սեբաստիոյ, Կեսարիոյ, Մելետինէի և Տաւրոսի շուրջը, համարձակութիւն տուաւ անոնց անջատօրէն և առանձին դիմադրելու թրքական արշաւանքին կամ միանալու անոր ինքնակամ, բոլորովին անկախ Կ. Պոլիսէն, մանաւանդ Ռոմանոս Դիոգինէսի մահէն* (1071) *յետոյ* (*Հմմտ.* Laurent, Byz. et les Turcs, էջ 67)։

Բ.

**ԿԵՍԱՐԻԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆ**

*Հայերը շարունակ դէպի Արեւմուտք կը տարածուէին և ընդարձակ երկիրներու՝ նոյնիսկ Բիւզանդացի մատենագիրներու վկայութեամբ, կու տային իրենց անունը։ Սակայն հետաքրքրական է գիտնալ թէ Կեսարիա ալ իր Հայ բնակչութեան պատճառով մտա՞ծ է* Հայաստան *կամ* Հայք *կոչումով այն վարչական և զինուորական բաժանումներուն մէջ որ Բիւզանդացիք ըրած էին։*

*Հռոմէական կայսրութեան երկուքի բաժնուած ատեն այլեւս գոր-*

ժամանակէն դադրած էր «Փոքր Հայք» բացատրութիւնը, վասնզի 378էն 386ի միջոցներուն Հռոմէական տիրապետութեան տակ գտնուող հայաբնակ այս շրջանակը Առաջին Հայք և Երկրորդ Հայք անուններով՝ երկու մասերու բաժնուած էր։

390ին երբ Հռոմէական Հայաստանի անկախ թագաւորութեան վերջ տրուեցաւ, Առաջին և Երկրորդ Հայք, խառնուելով այս նոր կցուած երկիրին, բոլոր հայաբնակ երկիրներուն վրայ տրուեցաւ Comes Armeniae տիտղոսով ընդհանուր կուսակալ մը, որուն ձեռքին տակ էին նաև իրենց տեղական ինքնավարութիւններով բնիկ իշխանները։

Արկադիոս (395 - 408) իր հօրը կատարած այս վարչական կարգադրութիւնը իր իշխանութեան ընթացքին պահեց։ Երբ Արկադիոս մեռաւ 408ին և Թէոդոս Բ. Փոքր եօթը տարեկան կայսր հռչակուեցաւ, Աթիմիոս խնամակալը փոփոխութիւններ ըրաւ գաւառական վարչութիւններու մէջ և Հայաստանի յունական բաժինը, կառավարել սկսաւ յոյն կոմսերով, և Բիւզանդական պետութեան համար սովորական մեթոտները հոս ալ կիրարկուիլ սկսան, բնակչութիւնը Բիւզանդացի դարձնելու համար։

Հակառակ սակայն իրենց այս ձգտումին Բիւզանդացիք, չկրցան ուրանալ Հայ ծագումը ո՛չ միայն Բիւզանդա՛յան Հայաստանի այլ նախապէս Փոքր Հայք կոչուած հողամասերու բնակչութեան և Թէոդոս Բ.ի իշխանութեան ատեն եղած գաւառական փոփոխութեանց միջոցին Հայկական գաւառներու շրջագիծը ընդարձակեցին նախկին Փոքր Հայքէն — որ արդէն շատոնց մտած էր պետութեան վարչական կազմին մէջ — կազմելով երկու նահանգներ՝ Առաջին Հայք և Երկրորդ Հայք:

ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔԻ՝ մայրաքաղա՛քն էր Սեբաստիա և գլխաւոր քաղաքներն էին Սեբաստուպոլիս, Նիկոպոլիս, Սատաղ, Կողոնիա, և ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔԻ մայրաքաղաքն էր Մելիտինէ և գլխաւոր քաղաքներն էին Արկա, Կոկիսոն, Արաբիսոս, Արիարաթէ, Կոմանա:

Ինչպէս կ'երեւի տրուած սահմաններէն, անիկա շատ ընդարձակ երկիր մը կը ներկայացնէր քան այն որ երբեմն կը ճանչնային Փոքր Հայք անունով, և Հայկական երկիրներու սահմանը կու գար կը հասնէր Կեսարիոյ մօտերը։

Իսկ Մեծ Հայաստանէն Բիւզանդական տիրապետութեան ենթարկուած գաւառներէն կազմուած էին երկու նահանգներ եւս, Ներքին Հայք և Նախարարութիւնք (Սատրապութիւնք = Satrapiae)։ Ներքին Հայոց մայրաքաղաքն էր Բասեան (=Դեւոնդուպոլիս) իսկ Սատրապութեանց ենթակայ էին հինգ նախարարութիւնները(1) որոնք Արշակունեանց անկումէն յետոյ Յունական Հայաստանի մէջ կը գտնուէին։

Բիւզանդիոնի համար բոլոր այս երկիրները կը կազմէին Հայաստանը։

Ուրեմն Դ. դարուն վերջը Կապադովկիոյ ինչ ինչ մասերը, արդէն Հայաստան նկատուիլ սկսած էին, իրենց Հայ խիտ բնակչութեան պատճառով։

Նոյնպէս հոծ Հայ գաղթականներու գոյութեամբ կրնայ մեկնուիլ Յուստինիանոս կայսեր 536ին կատարած վարչական նոր բաժանում-

---

(1) Ասոնք են 1. Մեծ Ծոփք, 2. Հանձիթ, 3. Ծոփք Շահունեաց, 4. Հաշտեանք, 5. Պաղնատուն:

ները, որով ո՛չ միայն կը միաձուլուէին Հայկական երկիրներու հետ Պոնտական երկիրները, Ալիսի գետահովտին ներքնակողմին գաւառները և Կիլիկեան գաւառներու հիւսիսակողման երկիրները, այլ նաև կարգ մը օրէնսգրական որոշումներով կը ջնջուէին հայկական որոշ առանձնաշնորհները, սեփական սովորութիւնները, առանձնայատուկ օրէնքները (տես վարը, էջ 346)։

Յուստինիանոս կայսրը (527–565) որուն ձգտումը եղած էր չափաւորել Դիոկղետիանոսէն և Կոստանդիանոսէն հաստատուած և խստիւ գործադրուած քաղաքական և զինուորական վարչութեան իրարմէ բոլորովին անջատելու դրութիւնը (Դելցեր, Ակզ. Բիւզն. Բանակաթեմերու, էջ 3) իր գահակալութեան երկրորդ տարին (528) իսկ ջնջեց «Հայոց իշխան»ին— որ մինչեւ այն ատեն «կոմս» կամ «դուքս» տիտղոսը կը կրէր — պաշտօնը(1) և Հայաստանի սահմանագլուխներուն վրայի փոքրիկ զինուորական հրամանատարութիւնները և Ծիտտաս (=Սիտտա, Sitta, Tzetta, Zeta) անուն քաջամարտիկ զօրավարը (ստրատելատ= στρατηλάτης) և հռչակաւոր Հայը իբր զինուորական պետ (Magister. Militum) Հայաստան ղրկելով վերջ տուաւ մինչև այն ատեն գոյութիւն ունեցող դուքսերու և կոմսերու դրութեան։

Ծիտտաս՝ որուն նստոց որոշուած էր Թէոդոսուպոլիսը (=Կարին-էրզրում) տիտղոս ունէր «Magester militum par Armenian et Pontum Polemoniacum et Gentes», որմէ կը հասկցուի թէ իր իշխանութեան ներքև ունէր Հայաստանէն զատ Պոլեմոնեան Պոնտոսը (Արեւմտեան Պոնտոս) և «Ազգաց» վայրերը խառն բնակչութեամբ (Խօզաթ, Բերկրի և Տերսիմ) (2)։

Այս ընդհանուր հրամանատարութիւնը ստորաբաժնուած էր երեք երկրորդական հրամանատարութեանց մէկ մէկ դուքսերու (duces) հրամանին տակ, որոնք կը նստէին Ա. Արթալիսոն (Artalison) Խարձեան նահանգին մէջ, Բ. Մարտիրոպոլիս (Martyropolis) Ծոփաց աշխարհին մէջ, Գ. Կիթառիճ(3) (Kitharidzon) Հաշտեան գաւառին (Asthianène) մէջ (տես Hubschmann, Հին տեղւոյ անունները. Դելցեր, Ակզ. Բիւզ. բանակաթեմերու և J. Laurent, L'armenie entre Byzauce et l'Islam, էջ 302)։

Յուստինիանոս զինուորական վարչութեան մասին Հայաստանի համար ըրած այս կարգադրութեանց հետ միաժամանակ երկրին քաղաքային վարչութիւնն ալ փոխեց և այս նորակազմ բանակաթեմը

---

(1) Այս կարգադրութիւնը ինքնին բաւական է ցոյց տալու թէ Յուստինիանոս Հայաստանը պետական ընդհանուր կազմին մէջ կը մտցնէր, վասնզի միայն ծայրագաւառներու մէջ դուքսերը կ'իշխէին զօրավարներու (stratége) տեղ։

(2) E. W· Brooks (տես Cambridge Medieval History, Բ. հատ. էջ 396) կը կարծէ թէ Յուստինիանոս Բ.ի (685–695 և 705–711) ա հն և հաւանօրէն 692ին Հայաստանի ապստամբութենէն յետոյ է որ միայն Հայաստանը և Պոլեմոնեան Պոնտոսը ենթարկուած են Magister militum per Armenianի, վասնզի այս նահանգները Հելլեսպոնտոսի և Կապադովկիոյ մէկ մասին հետ արմենիակներու կողմէ գրաւուած էին։

(3) Որուն ընդարձակ և ամուր բերդը շինել տուած էր Յուստինիանոս կայսրը։

կուսակալութեան վիճակի բարձրացնելով իբր կուսակալ՝ գահերէց (pracses) մը կարգեց։

Սակայն Ցիտտաս, որ կ՚երեւայ թէ կարողի պաշտօնատար մըն էր, իր պաշտօնավարութեան ութերորդ տարին, այսինքն 536ին ա-ւելի հակայ ծրագիր մը ներկայացուց կայսեր, որ գործադրեց զայն կրօնական և քաղաքական նպատակներով, տալով 536ին իր նշանա-ւոր ԼԱ. օրէնսդրական Հրովարտակը (Novelle)։

Յուստինիանոս այս հրովարտակը ուղղելով Հայաստանի Բդեշխ (proconsul) Ակակիոսի կ՚ըսէ թէ «կամ եղեւ մեզ տալ աշխարհին Հայոց օրէնս բնիկս, զի մի՛ զատեալ որոշեսցի յայլոց աշխարհաց մերոյ ընկերակցու-թեան, եւ շնորհեցաք նոցա զործակալս Հռոմայեցիս եւ խլեալ զիրն իրն սովո-րութիւնս ինչ նոցա ընտելացուցաք զնոսա բուռն բարուց Հռոմայեցւոց եւ պատուէր հրամանի եւս տուաք զի մի այլ օրէնս ունիցին, բայց զՀռոմայեցւոցն» (15 Ապրիլ 536ի տրուած օրէնք. Մատեան նոր ԻԱ. հատոր Է.)։

Այս առթիւ կը սահմանէ նաև վարչական նոր բաժանումներ (տես Մատեան Նորոց ԼԱ. հատոր Ժ. Ճառակ Ոսկեղէն Դպրութեան, Բ. տարի, էջ 177-186. Saint Martin. Հիւպշման, Ռամսէյ և Լոռան նաեւ օգտուած են իրենց գործերուն մէջ այս հրովարտակէն)։

Արդ ըստ այդ օրէնքին որ Հայաստանը Հռոմէական օրէնքներով վարելու հրամանին պէս նոյն 15 Ապրիլ 536 թուականը կը կրէ, Յուս-տինիանոս կը յայտարարէ թէ «բերի զտանեմք զաշխարհն Հայոց եւ սխալա-ւոր եւ կամիմք շրջել զնա ի միասեռ միաձայն դաշնակութիւն եւ հրամանօք զե-ղեցիկս սահմանելովք տալ նմա ըստ պնդութեան եւ նեցուկ եւ կարգ վայելուչ»։

Եւ կ՚ընէ հետեւեալ կարգադրութիւնները։

Հայաստանը կը բաժնէր հետեւեալ 4 վարչական շրջանակներուն։

Ա. ՀԱՅՔ՝ կեդրոն ունենալով Բազանէսն(1) (Լեւոնդոպոլիս կամ Յուս-տինիանուպոլիս) և իրեն ենթակայ Թէոդոսուպոլիս(2), Սատալա(3), Նիկո-պոլիս(4), Կողոնիա(5), Տրապեզունդ(6) և Կերասունդ(7) քաղաքները։

Բ. ՀԱՅՔ՝ կեդրոն ունենալով Սեբաստիան(8) և իրեն մաս Սեբաս-տոպոլիս(9), Կոմանա (Պոնտոսի)(10), Զելա(11) և Բերիսա(12)։

Գ. ՀԱՅՔ՝ կուսակալանիստ ունենալով Մելիտինէն(13) և գլխաւոր քաղաքներ Արկա(1), Արաբիսոն(2), Արիարաթիա(3), Կոմանա միւս(4) (Քերուսա կոչուած) և Կուկուսոն(5)։

Դ. ՀԱՅՔ՝ որուն կեդրոնն էր Մարտիրոսաց քաղաքն եւ Կիթարիզոն (Կթառիճ) բերդը, և կը բաղկանար Ծոփք, Անձիթ, Հաշտեանք և Բա-լահովիտ գաւառներէն(6)։

Իսկ չորս այս բաժանումները կ՚ենթարկէր միակ զինուորական հրամանատարի մը իշխանութեան, լայն իրաւունքներով։

Յուստինիանոսեան այս կարգադրութեամբ զինուորական միակ վարչութեան մը տակ Հռոմէական Հայաստան չորս վարչական շրջա-նակներու կը բաժնուէր և հոն խստագոյն կերպով կիրարկուիլ կ՚սկսէին Հռոմէական ընդհանուր օրէնքները։

Զինուորական այդ միակ շրջանակը առաջին հիմն էր այն զինուո-րական թեմին որ յետոյ Հայկական բանակաթեմ անունը պիտի առնէր, իր մէջ պարփակելով բոլոր Հռոմի տիրապետութեան ենթակայ հայա-բնակ վայրերը (Հմմտ. Հիւպշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 38-39)։

Դիտելի է որ այս բաժանումներէն Առաջին Հայքի մէկ մասը և Դ. Հայքը ամբողջ Հայաստանի բնագաւառին մէջ ըլլալով, անոնց հայկա-կան կոչումով մը ճանչցուիլը զարմանալի չէ, սակայն միւս երկու եր-կիրները որոնք մեր բնագաւառէն դուրս են և կը ներկայացնեն Փոքր Հայքը և Պոնտոսը, եթէ այսպէս կոչուած են, ապահովաբար անոր համար է որ անոնք խիտ հայ բնակչութիւն մը ունէին, այդ շրջանին։

Քիչ յետոյ, Զ. դարուն վերջերը, երբ տակաւին արաբները՝ Բիւ-զանդական կայսրութեան մեծ ոսոխները և յաւիտենական թշնամի-ները, հրապարակ չէին եկած, և Բիւզանդիոն կը գտնուէր, իր զօ-րութեան և տարածութեան զենիթին վրայ, կայսրութեան նոր հողեր կցուած ըլլալով, նոր բաժանումներ կատարուեցան Հայկական հողե-րու և Հռոմէական Հայաստանի գաւառներուն թիւը 4էն 7ի բարձրա-ցաւ։

Այս նոր կարգադրութիւնը կատարեց Մօրիկ հայ կայսրը (582-603) 591ին, անմիջապէս որ պարսից հետ համաձայնութեամբ Հայաստանը բաժնեց և ինքը ստացաւ Աղձնիքը, Տարօնը, Այրարատը, և նոյնպէս Վրաստանը Թիֆլիսով միասին (H. Gelzer· «Georgii Cyprii» descriptio orbis romani, 1890, էջ LVIII. Հիւպշման, Հին տեղւոյն անունները բնա-գիրին, էջ 232, Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam, էջ 303)։

(1) Կոչուած է նաև հայերէն Բաղանիս և կը համապատասխանէ այժմեայ Բասէնին (թուրքերէն Բասենլեր)։ Յուստինիանոսի անունով «պատուեալ» էր, ինչպէս կայսրն ալ կ՚ըսէ։

(2) Կարին կամ Էրզրում։

(3) Սատաղա ալ տառադարձուած, այժմ Քելգիտ։

(4) Այժմ Շապին-Գարահիսար։

(5) Քէօյլիւ Հիսար հիմա։

(6) Պոնտոսի մայրաքաղաքը՝ Տրապիզոն։

(7) Կիրասոն։

(8) Այժմ Սըվազ։

(9) Այժմ Թըրհալա։

(10) Այժմ Կիւմէնէք գիւղ, աւերակ մերձ ի Թօգաթ։

(11) Այժմ Զիլէ։

(12) Բրիսա նաև ծանօթ էր Բերիսա անունով և կը պատկանէր ա-ռաջ յունական Պոնտոսի։

(13) Արդի Մալաթիան։

(1) Արդի Կէրկէրը։

(2) Արդի Եարբուզը՝ Ջէյթունի մօտ։

(3) Ոմանք Ազիզիյէի և այլք Կիւրինի տեղը կը կարծեն։

(4) Այս Կոմանան պոնտականէն որոշելու համար Կոմանա Կապա-դովկիոյ ալ կոչուած է։ Հաճընի և Ազիզիյէի միջև աննշան գիւղ մըն է հիմա։

(5) Կը համապատասխանէ արդի Կէօքսունին։

(6) Այս սահմանումէն կ՚երեւայ թէ Դ. Հայքը որ բոլորովին նոր կը կազմակերպուէր «Ազգաց» երկրէն, կը բաղկանար խառն բնակչու-թեամբ Խօզաթի, Բերկրիի, և Տէրսիմի շրջանակներէն, այսինքն Մե-լետինէէն մինչև Տիգրիս և նոյնիսկ մինչև Մարտիրուպոլիս (Մուֆար-ղին), Տիգրիսէն ալ անդին տարածուած երկիրներէն։

Այս եօթը նոր բաժանումներն էին.

1. ՄԵԾ ՀԱՅՔ՝ որ գրեթէ նոյնն էր 536ի բաժանման Ա. Հայքին հետ (Եփրատի վերին հովիտը)։

2. ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ՝ որ գրեթէ նոյնն էր նախկին Բ. Հայքի հետ (Սեբաստիոյ երկիր)։

3. ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔ (Մելետինէ, Արկա, Կոկիսոն, Կոմանա) հնագոյն Բ. Հայքի և Յուստինիանոսի Դ. Հայքի մէկ մասը։

4. ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ՝ կամ ՅՈՒՍՏԻՆԻԱՆԱ (Մարտիրոսայ քաղաք, Դարա, Արծն, Մեծ Ծոփք, Կլիսուրա Բաղաղացւոց = Kleisura Balaleison) Դ. Հայքի միւս մասը Հիւսիսային Միջագետքի հետ միացուելով կազմուած։

5. ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ ՄԻԽՍ կամ ՉՈՐՐՈՐԴ ՅՈՒՍՏԻՆԻԱՆԱ (Դատիմա, Արշամուշատ, Կթառիճ և Ծոփք Շահունեայ, Հանձիթ, Դեգիք (Digisène) Կարին, Բալահովիտ (= Bilabitene), Բալու (Baline), Խորձեան, Հաշտեանք), Դ. Հայոց մէկ մասը, Բարձր Հայոց մէկ մասին հետ միացուելով կազմուած։

6. ԽՈՐԱԴՈՅՆ կամ ՆԵՐՔԻՆ ՀԱՅՔ (Armenia Interior) (Տայք, Սպերին Հայք), բոլորովին նորստեղծ մաս մը որ կը տարածուէր Ճորոխի հովիտէն մինչեւ Արաքսի հովիտը։

7. ՆԵՐՔՍԱԴՈՅՆ ՀԱՅՔ (Armenia Profunda) Դուինի արեւմտեան կողմը (Հիւպշման, Հին տեղւոյ անունները, հայ թարգ. էջ 49-50) կամ այլապէս Կարսի և Սեւանայ լիճին միջեւ և այս սահմանագիծերուն միջեւ Արաքսէն հուր (ըստ Laurent-ի, նոյն, էջ 303)։

Ասոնցմէ առաջին երեք բաժանումները Հայոց բնագաւառէն դուրս են և եթէ Յունական դիւաններու մէջ Հայոց երկրին մասերը կը համարուին, պարզապէս ստուարաթիւ Հայեր պարունակելուն համար է անշուշտ։

Է. դարուն երկրորդ կիսուն, Դ. Հայք՝ իր մայրաքաղաքովը միասին, խալամ իշխանութեան տակ ինկաւ։ Անկէ յետոյ սովորութիւն եղաւ Բիւզանդացւոց իշխանութեան տակ եղող Դ. Յուստինիանեա՝ Դ. Հայք անունը տալ, ինչպէս յայտնի կը տեսնուի ըստ Գելցերի (Սկզ. Բիւզ. Բանակ. էջ 25) Թէոփանոսի, Մ. Խորենացիի, Ստեփ. Տարոնեցիի, և այլոց գրութիւններէն։ Սակայն դիւանական գրութեանց մէջ պաշտօնական անունին անփոփոխ մնալուն կը վկայեն ժողովներու արձանագրութիւնները (նոյն, էջ 25)։

Նոյնպէս պատմական որոշ տուեալներ (տես, մանրամասնութիւնք Հ. Գելցեր, Սկզ. Բիւզ Բանակաթեմերու, էջ 22-28) ցոյց կու տան թէ եկեղեցական վիճակները կը համաձայնին առաւելապէս քաղաքային բաժանումներու և Յուստինիանոս Բ. կայսեր իշխանութեան ատեն (685-695) տակաւին անփոփոխ մնացած էին Մորիկի ըրած նահանգային բաժանումները։

Եւ որովհետեւ նահանգներու զինուորական բաժանումները բոլորովին տարբեր էին, ապա ուրեմն կը հետեւի, թէ Յուստինիանոս Բ.ի ժամանակ զինուորական թեմերը՝ նահանգներու քաղաքային բաժանումներուն չէին համապատասխաներ (նոյն, էջ 29)։

Քաղաքային վարչութիւնը կը շարունակուէր այսպէս բոլորովին անջատ զինուորական կազմակերպութենէն մինչեւ որ Լեւոն Իսաւրացի (717-741) զանոնք իրարու միացուց։



Ինչպէս կը տեսնուի Բիւզանդացիներու կողմէ կատարուած վարչական այն բաժանումներուն՝ որոնք Հայք կամ Հայաստան անունը կը կրէին, մաս չէ կազմած Կեսարիան։

Հ. Միքայէլ վրդ. Չամիչեան (Պատմ. Հայոց, Բ. հտ. էջ 523) չեմ գիտեր ո՞ր ստուգեան վաւերական աղբիւրներու վրայ հիմնուած, կ'ըսէ թէ «Պատմութիւն ժողովոյն Քաղկեդոնի» (էջ 607), ինչպէս նաև «Պատմութիւն եօթներորդ ժողովին» (էջ 403) անուն գործերուն մէջ Կեսարիան Երկրորդ Հայոց մէջ գրուած էր։

Քաղկեդոնի ժողովը գումարուած ըլլալով 451ին, եթէ վաւերական են այս գրութիւններն Կեսարիա՝ Թէոդոս Բ.ի օրով կատարուած վարչական բաժանումներու ատեն Բ. Հայքի կցուած կ'ըլլայ, ինչ որ անհաւանական կը թուի։

Իսկ եօթներորդ տիեզերական ժողովը գումարուած է Նիկիա 787ին, այսինքն Մորիկէն շատ ետքը։ Այս ժամանակամիջոցին կարելի չէր Կեսարիան Բ. Հայոց մէջ դնել։

Բիւզանդացիք Կեսարիան և շրջակայքը Հայաստան կամ Հայք անունով վարչական-քաղաքային բաժանումներուն մէջ չեն դրած երբեք։ Կեսարիա կը գտնուէր Առաջին Կապադովկիա անունով քաղաքային բաժանումին մէջ (Կապադովկիա բաժնուած ըլլալով Առաջին և Երկրորդ Կապադովկիա անուն երկու քաղաքային բաժանումներու)։

Սակայն նկատելի է և ուշագրաւ, որ Կեսարիա երբեմն մաս կազմած է զինուորական այն հրամանատարութեան որ Հայկական անուն ունէր կամ Արմենեակ թեմ (τὸ τῶν Ἀρμενιάκων θέμα=Thema Armeniacon) կը կոչուէր։

Կոստանդին Ծիրանածին կայսրը որ Բիւզանդական զինուորական վարչութեան վրայ ունի հատոր մը՝ Թեմոնայք անուն, բանակաթեմերու կազմակերպութեան ժամանակամիջոցը կը դնէ՝ Հերակլի ատեն (610-640) որ ատեն կ'սկսին արդարև Բիւզանդական կայսրութեան տագնապալից օրերը, արաբներու դէմ պատերազմներուն պատճառով։

Հերակլն է որ կը բաժնէ Բիւզանդական բանակը եօթը մեծ հրամանատարութեանց, ինչպէս կը կարծէ Գելցեր (Սկզ. Բիւզն. Բանակ. էջ 7)։

Այդ եօթէն հինգը կը գտնուէին պետութեան Ասիական բաժինին մէջ (տես I. B. Bury. A History of the later Roman Empire. Բ. հատ. էջ 399)։ Լեւոն Իսաւրացի, իսկապէս զինուորական մըն էր, ինքն ալ բանակին վերակազմութեամբ զբաղեցաւ, և Ասիոյ թեմերուն թիւը եօթնի բարձրացուց(1)։

Ասոնցմէ երկուքը՝ Անատոլեանը կամ Արեւելեանը և Հայկականը որոնք կազմուած էին Արաբներու արշաւանքին դիմակալելու պաշտօնով, ըստ Կոստանդին Ծիրանածինի (Թեմոնայք, էջ 16) հետեւեալ պայմաններու մէջ ծագում առած էին։

«Ըստ նուազիլ պետութեանն Հռոմայեցւոց՝ յերեսաց Հագարացւոցն ամբարտաւանց, բաժանեցան (ազգքն արեւելից) ի թեմս ուրոյն ուրոյն զատ ի միմեանց, մինչ յառաջագոյն մինչեւ ի ժամանակս թագաւորութեանն Յուստինիանոսի

(1) Յետոյ հետզհետէ նորանոր ստորաբաժանումներով թեմերու թիւը միայն ասիական բաժինին մէջ 17ի հասաւ (C. Bayet. Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 445)։

եւ Մաւրիկեայ՝ ամենեքին ընդ միով իշխանութեամբ էին, որում վկայէ ինքն իսկ Պեղիսար(1), որ եւ եղեւ հրամանատար (μονοστράτηγος) Արեւելից: Այլ իբրեւ սկսանէին Հագարացիք ի նեղ արկանել զՀռոմայեցիս եւ աւերել զքաղաքս նոցա եւ զգիւղս, ապա հարկ եղեւ հատանել մասն մի փոքրիկ յերկրէս եւ յանձն առնել զայն իշխանի ումեմն, զոր եւ անուանեալ կոչէին իշխան Արեւելից ('Ανατολικὸν)»։

*Ուրեմն այսպէս Արաբական զօրութեան դէմ կռուելու սահմանուած հրամանատարութեններէն կազմուեցաւ նախ Անատոլեան կամ Արեւելեան զօրաբանակը որուն առաջին յիշատակութիւնը կ'ըլլայ 669ին Կոստանդին Պոգոնատոս կայսեր առեն։*

*Անատոլեան բանակաթեմը՝ կայսրութեան միւս բոլոր բանակաթեմերէն ամէնէն ընդարձակն էր, որ Դիոկղետիանոսի օրով կատարուած նահանգային բաժանումներէն, Ասիա և Լիւդիա, Փրկաւէտոն Փռիւգիա (գրեթէ ամբողջ), Լիկաւոնիա, Պեսիդիա, Բ. Կապադովկիա և Իսաւրիա նահանգները իր իշխանութեան տակ ունէր (Գելցեր,* Սկզ. Բիւզ. Բանակ. *էջ* 10)։ *Թեմին հրամանատարին ունեցած պատիւն ամենամեծն էր, և այն–որչափ կ'երեւայ՝ սկիզբէն ի վեր (Նոյն)։ Իտալիոյ և Աֆրիկէի էքսարքներուն պէս ինքն ալ միշտ «պատրիկ» պատուանունով կը յորջորջուէր (Նոյն)։*

*Գալով Հայկական բանակաթեմին անոր սկիզբը մինչեւ Յուստինիանոս կը հասնի։ Ինչպէս տեսնուեցաւ այս կայսրը միացուց Հայաստանի զինուորական և քաղաքային իշխանութիւնները հրամա-*


ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆ
(911 – 959)


ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆ,
ԵՒ ԶՈՅԷ ԹԱԳՈՒՀԻՆ

Գրագէտ կայսր որ անուանական իշխանութիւն մը ունեցած է եւ ինքն գրականութեամբ զբաղած է: Գրած է իր հօրը Վասիլի կենսագրութիւնը, Եդեսիոյ դաստառակին պատմութիւնը, Բանակաթեմերու վրայ անգին գրութիւն մը, Կայսերական արարողութեանց ծիսարան մը, բժշկական, երկրագործական երկեր եւ օրինագիրք մը:

*Նաւատորմութեան տակ, Ստրատեղատի մը որ Մօրիկի իշխանութեան շրջանին հանգիտապատիւ էր Արեւելեան (= Անատոլեան) և Եւրոպեան երկու մեծ հրամանատարութեանց Հրամանատարներուն (Գելցեր,* Սկզ. Բիւզ. Բանակաթեմերու, *էջ* 12) *և ինքն ալ կը կրէր* պատրիկ *տիտղոսը և պետական բանակին բարձրագոյն աւագանիին կը պատկանէր պատուոյ աստիճանով։ (Թէոփանէս,* 722–726. *Գելցեր,* Սկզ. Բիւզ. Բան. *էջ* 14)։

(1) *Բելիսարիոս, նշանաւոր զինուորականը որ Յուստինիանոսի բանակներուն հրամայած է։*



*Հայկական բանակաթեմին վերջնական կազմակերպութեան ժամանակն է՝ Է. դարը, ուր ինչ որ չափազանց նշանակելի է կ'առնէ* Արմենեակ *(Հայկական) անունը* (Gelzer, «Der Genesis der Byz. Themen-verfassung»(1), *էջ* 54), *անշուշտ անոր համար որ իր սահմաններուն մէջ ունէր Հայաստանը* (Ramsey, *էջ* 316)։

*Սակայն Կոստանդին Ծիրանածին, որուն օրով Հայաստանը դադրած էր Բիւզանդական պետութեան պատկանելէ այլ սակայն Հայկական թեմ մը կար, կ'ըսէ թէ* «թեմն որ անուանեալ կոչի Հայկական՝ չունի ինչ սեփական անուն, զի զայս անուն ընկալաւ նա ի դրացւոյն եւ սահմանակցէ իւրմէ ի Հայոց: Նա թէ ինձ պատճառ թուի ասել, եթէ առ Հերակլեաւ արքային եւ կամ ի յետին ժամանակս զյորջորջումն զայս ընկալաւ» (Թեմորայք, *էջ* 18–20)։

*Սակայն ասիկա ապահովաբար կեղծիք մըն էր որ Հայածին այս կայսրը 'ի գործ կը դնէր պարզապէս իր օրով Հայկական բանակաթեմին սահմաններուն մէջ գտնուած հողերուն Հայկական նկարագիր չտալու և զանոնք Հայաստան չհռչակելու համար և կամ Բիւզանդական կայսրութեան կորուստներուն չանդրադառնալու համար։*

*Իրականութեան մէջ Հայկական բանակաթեմը— որուն հիմը դրած էր Յուստինիանոս — Ը. և յաջորդ դարերու ընթացքին ամենակարեւոր թեմն էր, սակայն իր հողերէն կարեւոր մաս մը այդ տարիներուն գրաւուած էին արաբներէն,*

*Լեւոն Իսաւրացի* (716–741), *որ զինուորական և քաղաքային առանձին վարչութիւններու գոյութիւնը վնասակար գտնելով—վասնզի անոնք նախանձընդդէմ հակառակութեամբ մը իրարու դէմ կը մաքառէին և պետութեան ներքին քայքայման կը նպաստէին — վերջ տուած էր քաղաքային վարչութեան՝ զանոնք կառավարելու հոգը զինուորական հրամանատարներու վստահելով։ Հերակլեան հարստութեան առեն հաստատուած զինուորական թեմերը՝ քաղաքային նահանգներու վերածեց և պետութեան նոր բաժանումներ տուաւ (Գելցեր, Նոյն, էջ* 31)։

*Հ. Գելցեր կ'ըսէ թէ* «պետութեան կազմակերպութեան համար Լեւոնի ըրածներուն մասին մեր բոլոր գիտցածները անուղղակի աւանդութիւններ են. ուստի եւ լոկ ենթադրութիւն:

«Ը. դարուն գիտենք որ յԵւրոպայ՝ երեք եւ յԱսիա— առանց նաւատորմիղը կամ ծովային բանակաթեմը միասին համրելու — տասնումէկ զինուորական թեմ կար: Անատոլեան (Արեւելեան) մեծ բանակաթեմը՝ որուն հրամանատարն էր երբեմն Լեւոն, պարզապէս վարչական պատճառներու համար երկու մասի բաժնուելով, արեւմտեան՝ Ասիա, Լիւդիա, Կարիա (բուն մասին) եւ Փռիւգիա Ա. գաւառները՝ գոս նոր թեմի մը վերածուեցան, եւ հոս բանակած Եւրոպացի զնդերուն անուամբը՝ նահանգն եւս Թրակեան բանակաթեմ անուանուեցաւ: Թեմին ընդհ. հրամանատարին ու նահանգապետին՝ նիստն էր՝ Եփեսոս, Ասիոյ առաջին քաղաքը (*Հ. Գելցեր, Նոյն, էջ* 31–32 *և* Ch· Diehl. l'Origine du régime des thémes dans l'empire Byzantin. Paris. 1896, *էջ* 8)։

(1) «Սկզբնաւորութիւն Բիւզանդական բանակաթեմերու դրութեան», *որ համառօտելով թարգմանած է Հ. Գարեգին Գարանֆիլեան Վիեննայի Մխիթարեանը (տպ.* 1903)։ *Գերմաներէն բնագրին էջը նշանակուած առեն* Themenvert. *համառօտութիւնը պիտի գործածեմ։*

Թէև դժուար է վճռական ըլլալ— ինչպէս Հ. Գելցեր կ'ըսէ— սակայն հաւանական է ենթադրել գերման գիտունին հետ թէ Բուկելլարիոն զօրաբանակն ալ կազմուած է «պատրիկ, կուրապաղատ և կոմս կայսերական ասպաստապահ Ոփսիկիոնի» Արտաւազդ զօրավարին ըմբոստութեան զսպումէն յետոյ (714), Անատոլեան մեծատարած հրամանատարութեան արեւելեան միւս կէսը, Անկիւրիա գլխաւոր քաղաքով, ուրոյն բանակաթեմի վերածուելով (նոյն, էջ 33)։ Այսպէս Իսաւրեան հարստութեան ժամանակ Անատոլեանէն անջատուելով երկու զօրաբանակներ կը կազմուէին, ինչպէս աւելի յետնագոյն ժամանակներու մէջ պիտի կազմուէին Կապադովկիոյ բանակաթեմը՝ և Սելեւկիոյ սահմանակոմսութիւնը՝ Անատոլեանէն (Արեւելեանէն) և Քարսիանոն բանակաթեմը՝ Հայկականէն անջատուելով, մինչ նախապէս այդ բանակաթեմերը մէկ մէկ վաշտեր (turma) էին միայն, Թրակէսեանին պէս, (Գելցեր, Սկզ. Բիւզ. բանակաթեմերու, էջ 32)։

Թէոդորայի և անոր որդւոյն՝ Միքայէլ Արբշիռի ժամանակակից Արաբ մատենագիր մը՝ Իպն Խորդադբէ իր «Քիթապ ալ մասալիկ վա՛լ մամալիկ» անուն գործին մէջ որ պէտք է գիրի առած ըլլայ 840–845ի տարիները, կը խօսի Բիւզանդական պետութեան քաղաքային և զինուորական վարչութեան վրայ, օգտուելով Մուսլիմ Իպն Ապի Մուսլիմ Ալ Ջարմիէն, կը յայտնէ թէ Բիւզանդական կայսրութիւնը կը բաժնուէր 14 նահանգի, որոնցմէ 11ը Ասիական բաժինին մէջ(1)։

Իր տեղեկութիւնները որոնք Միքայէլ Թլուատի (820–829) և անոր որդւոյն՝ Թէոփիլոսի (829–842) ժամանակին կը պատկանին, կը կարծըւին ըլլալ ստուգապատում, (Գելցեր, «Սկզ. Բիւզ. բանակ. էջ 35–37)։

Արդ. այս ցուցակէն կը տեսնուի թէ նախկին Անատոլեան և Հայկական բանակաթեմերը ստորաբաժանուած և անոնցմէ կազմուած էին մի քանի բանակաթեմեր, որոնց մէջ էին.—

1. Անատոլուս(2) (الناطلوس), այսինքն՝ Արեւելք։ «Այս նահանգը

(1) Մանաւանդ այս տեղեկութիւնները քննութեան առած է M. C. Defrémery, (Remarques sur l'ouvrage géographique d'Ibn Khordadbeh et principalement sur le chapitre qui concerne l'empire Byzantin. Jonrnal Asiatique VI, Série T. VII. 1866 էջ 239 ff)։ Շնորհիւ Պ. Գէորգ Մըսըրլեանի ինծի տուած տեղեկութիւններուն ի վիճակի եմ ըսելու թէ Եագուտ արաբ մատենագիրն ալ նոյն թուով բաժանումներ կը ներկայացնէ։

(2) Իպն Խորտադբէի ցուցակին մէջ ութերորդը։ Գելցեր առաջին երկու տառերը յօդ նկատելով Ան–Նաթոլուս գրած է, սակայն յաջորդ Խալդիա և Սալուկիա առանց յօդի գրուած են, այս ալ պէտք է կարդալ Ալնաթոլուս մէկ բառ։ Ունէր 15000 զինուոր ըստ Պաղտատցի Ապո՛ւլ Ֆարաջ Կոտամա Իպն Ջաֆարի, որ իր Բիւզանդական թեմերու համառօտագրութեան մէջ Իպն Խորդադբէի գիրքը ծայրաքաղ ընդօրինակած է, իր կողմէ յաւելումներով։ Ասոնցմէ կարեւորներէն է զինուորներու թիւը որ նշանակած է։ (Այս հեղինակին գործը իբր յաւելուած Իպն Խորդադբէի գործին հրատարակուած է «Extraits du livre de l'impot foncier par Aboul-Faradj Kodâma ibn Gafar le secrétaire)։





Հռոմէական պետութեան ամենամեծ նահանգն է, ունի Ամուրիա(1) քաղաքը եւ երեսուն ուրիշ ամրոց: Այս նահանգին մասը կը համարուի նաեւ Ալ-Բիտին եւ Ալ-Մուբաթային»:

2. Խարսիուն(2) (خرسيون) «Մալաքիոյ ճամբուն վրայ, բացի Խարշանա գլխաւոր քաղաքէն, ուրիշ դեռ չորս ամրոց ալ ունի»:

3. Ալ-Արմինիակ(3) (الارمنياق) «ունի Կոլոնիա(4) եւ տասնուվեց ամրոց»:

4. Խալդիա(5) (خلدية) «որ Հայաստանի (Արմինիա)՝ սահմանակից է եւ վեց ամրոց ունի»:

5. Սալուկիա(6) (سلوقية) «Ասորւոց ծովուն քով որուն սահմաններն են Թարսուս եւ Ալ-Լամէս գետը: Նահանգիս կուսակալին պաշտօնն է կիրճերու վրայ (Pylae Cilicae) հսկել: Այս նահանգին մէջն է Սալուկիա եւ ուրիշ տասն ամրոց»:

6. Ալ-Կապադոկ(7), «որուն սահմաններն են՝ Թարսոսի, Ատանայի եւ Ալ-Մասիսայի(8) լեռները: Այս նահանգին ամրոցներուն կարգէն են՝ Կոռա(9), Հասին(10), Անթիգավա(11), Ալ-Անրաք եւ Դու՛լ Կիլա: Այս վերջինք ամրոցներով

(1) Amorium, *հիմա Համզա-Հաճի կամ ըստ ոմանց Սիվրի Հիսար։*

(2) *Իպն Խորդադբէի ցուցակին մէջ իններորդը, Բիւզանդական* Քարսիանոն, *ունէր* 4000 *զինուոր ըստ Ապուլ Ֆարաճի։*

(3) *Իպն Խորդադբէի ցուցակին մէջ տասնեւմէկերորդը, և Բիւզանդական «Հայկական բանակաթեմը» որ ունէր* 4000 *զինուոր ըստ Ապուլ Ֆարաճի, Գելցեր սակայն շատ բանաւոր կերպով կ'առարկէ թէ թիւի սխալ մը պէտք է ըլլայ, և «չափազանց անհաւանական» կը համարէ այդ թիւը (տես* Սկզ. Բիւզ. Բանակ. էջ 48)։ *Նագուտ արաբ մատենագիրը արդարև զինուորներու թիւը՝* 9000 *և իբր կեդրոնավայր այս բանակաթեմին Ամասիա քաղաքը նշանակած է։*

(4) *Կողոնիա, հիմա Քէօյլիւ Հիսար։*

(5) *Արաբ մատենագրին ցուցակին մէջ տասներկուերորդը, և Բիւզանդական և Հայկական Խաղդիքը, որ ունէր նոյնպէս* 4000 *զինուոր ըստ Ապուլ Ֆարաճի։*

(6) *Տասներեքերորդը նոյն ցուցակին և* Սելեւկիա *հաւանօրէն, որ ունէր* 5000 *զինուոր ըստ Ապուլ Ֆարաճի։*

(7) *Տասնեւչորրորդը Իպն Խորդադբէի ցուցակին մէջ, Կապադովկիան է, որ ունէր* 4000 *զինուոր ըստ Ապուլ Ֆարաճի։ Նագուտ երկու ձեւով կ'արտասանէ կապադովկիա բառը,* Էլ-Գուպազագ *կամ* Գապազիկ:

(8) *Նագուտի գրածէն կը հասկցուի թէ Միսիսի լեռներն են։*

(9) *Կամ Կորա, Կոստանդին Ծիրանածին կը յիշէ* (Թեմորայք, *էջ* 21) «φρούριον τὸ χαλούμενον Κόρου»։ *Նագուտ կ'ըսէ թէ* Հըսնէլ Գոռա *է կեդրոնավայրը այս բանակաթեմին։*

(10) حصن = *Հիսն Աս-Սաքալիբա (Սլաւաց գղեակ), (Գելցեր,* Սկզ. Բիւզն. Բանակ. *էջ* 58)։ *Ապահովաբար սխալ մը կայ ընթերցման* Հըսն *= բերդ ամրոց կը նշանակէ և հաւանօրէն երեք յաջորդ և մէկ իրմէ առաջ գտնուած բառերուն հետ կապ ունի և առանձին տեղ մը չի նշանակեր։*

(11) *Ուղղագծուած նաև Անթիգուա, Նագուտ ունի Անտիխաւաս անուն բերդ մը որ պէտք է նոյնը ըլլայ։*

երջապատուած լեռ մըն է: Արաբները անոր Դու'լ Կիլա (Դեխոյ ամրոցներու) անունը տուին, (սակայն իսկական անունն է Ջուսաբրուն(1) (جسطرون), որ կը նշանակէ «աստղներու մերձեցող»: Բացի այս վերոյիշեալ ամրոցներէն, դեռ անոնցմէ տասնուչորս ուրիշ ալ կայ(2): Մաքամիր երկրին(3) մէջ կը գտնուին՝ Մաջիդա, Բալանսա (Բալիսա), Մալանդասա, Կունիա(4), Մալակուբիա(5), Բադալա(6), Բարբավա եւ Սալամուն դղեակները(7)»:

*Ինչպէս կը տեսնուի Արաբացի մատենագրին տեղեկութիւնները մասնաւորապէս Կապադովկիոյ մասին հոխագոյն են, վասնզի անիկա Արաբ սահմանագլուխին վրայ ըլլալով մասնաւորապէս կը շահագրգռէր զիրենք։*

*Արաբ հեղինակին տուած տեղեկութիւններէն կը հասկցուի նաև թէ Թ. դարուն վերջին կէսին Արեւելեան բանակաթեմէն բաժնուած էին Թրակեսեան զօրաբաժիններէն յետոյ նաև Կապադովկիա (հին Բ. Կապադովկիան) և Սելեւկիան (հին Իսաւրիան)։*

*Կոստանդին Ծիրանածին առաջինը կը կոչէ* Փոքր Կապադովկիա «որ այն ինչ զանուն թեմի զանձամբ էառ» (Թեմորայք, 20 1 *և* 10)։ *Իսկ իր* Վարչութիւն Կայսրութեան *անուն գործին մէջ* (224. 18) *նոյն Ծիրանածին կայսրը բացայայտ կը գրէ թէ Նախապէս Կապադովկիա Անատոլեան բանակաթեմին մէկ վաշտը* (Turma) *կը նկատուէր, որ յետոյ զատ գումարտակի կամ բանակաթեմի վերածուեցաւ։ Իսկ Սելեւկիա՝ անկախ ըլլալով հանդերձ, երկրորդ կարգի հրամանատարութիւն ունէր միայն։ Հետեւաբար իր կուսակալը ոչ թէ* στρατηγὸς *(=հաստուածապետ) այլ պարզապէս* κλεισουράρχης *(=սահմանապահ կոմս) կը յորջորջուէր (Գելցեր, նոյն, էջ* 43)։

*Իսկ Հայկական մեծ բանակաթեմը որուն հողերը Լեւոն Իսաւրացիին գահակալութեան Թուականէն առաջ —ինչպէս ըսի— մեծ մասամբ արաբական տիրապետութեան ենթարկուած էին, տեղափոխուած էր դէպի արեւմուտք, պահելով իր անունը։*

---

(1) *Ռամսէյ կը ջանայ Ջիբիստրուն* (= جيسطرون Κυβίστρων) *ընթերցումը պաշտպանել* (*տես* Asia Minor, *էջ* 340 – 341)։ *Տես այս մասին Կիզիսդրայի վրայ խօսուած տեղն։ Կը կարծուի ըլլալ այսօրուան Էրէկլին։*

(2) *Նագուտ միայն երեք բերդ կը յիշէ Գուվվա (Կորա?), Խատրա և Անտիխաւաս։*

(3) *Մաթամիր՝ յոգնակին Մաթմուրա բառին, կը նշանակէ գետնափոր տեղ ուր կերակուր կամ դրամ կը պահուէր։ Նագուտ կ'ըսէ թէ «յաղթութեանց գիրք»ին մէջ յիշատակուած է Ջատ էլ Մաթամեր կամ Մաթամեր, որ Սուրիոյ սահմանէն անդին էր։ Իսկապէս կը համապատասխանէ Լիկանդիոյ սահմաններուն։*

(4) *Նագուտ կը յիշէ* Գուրիա *կամ* Գոնիա *ձեւով։*

(5) *Թէոփանէս կը յիշէ Մալակոպէա մը, իսկ Նագուտ կը յիշէ իբր քաղաք Մալգոնիա։*

(6) *Կարգացուած նաև Թավալա և կը կարծուի ըլլալ Անդաբալիս։*

(7) *Նագուտ Կապադովկիոյ մէջ կը յիշէ միայն երեք քաղաք* Գուրիա *կամ* Գոնիա, Մալգոնիա *և* Ճարդելիա *կամ* Կարդելիա: *Առաջին երկուքը ինչպէս տեսնուեցաւ յիշուած են իպն Խորդադբէէն, միայն վերջինը չէ յիշուած։*



*Այնպէս որ փոխանակ Հայաստանի անիկա իր իշխանութեան սահմանին մէջ ունէր Եփրատի հիւսիսային կողմը մինչեւ Սև ծով, Եփրատի արեւմուտք՝ Կեսարիայէն անդին, մինչեւ այն գիծը որ կ'անցնի մերձաւորապէս Տիանայէն Սինոպ* (*տես* J. Laurent, L'Armenie entre Byz. et l'Islam, *էջ* 307) *կամ ուրիշ բացատրութեամբ մը իր մէջ կը բովանդակէր* յունական եւ Պոլեմոնեան Պոնտոսը, Առաջին եւ Երկրորդ Հայք (*Դ. Հայքը մեծ մասամբ արաբական իշխանութեան տակն էր*) եւ Առաջին Կապադովկիան (*Կեսարիոյ շուրջը*) (*Գելցեր*, Սկզ. Բիւզ. Բանակ. *էջ* 14)։

*Նոյնիսկ Ժ. դարուն ան դադրած էր պարունակելէ Հայաստանի ոեւէ մէկ մասը, այլ կ'իշխէր Կապադովկիոյ և Պոնտոսի վրայ և նոյնիսկ Ալիսէն արեւմուտք մինչեւ Դոքիա* (Dokeia — *այժմ Թոսիա*) *և Անդրապա* (Andrapa = *այժմ Իսկիլիպ*) *Պափլագոնեան քաղաքները* (Ramsay, *էջ* 316)։

*Ինչպէս այս սահմանումէն կ'երեւայ այս զինուորական մեծ հրամանատարութեան կամ բանակաթեմին ենթարկուած էին ժամանակին համաձայն, վերին և մինչև Եփրատեան Հայկական երկիրներէն զատ՝ Եփրատի արեւմուտքը գտնուող Հայաստանէն՝ այսինքն Փոքր Հայքէն զատ ոչ-հայկական այն նահանգները որոնց գլխաւոր քաղաքներն էին Տրապիզոն, Ամասիա և Կապադովկեան Կեսարիա* (Laurent, *նոյն*, *էջ* 302)։

*Հայկական բանակաթեմի իրաւասութեան այս շրջանակը* (*տես Գելցեր*, Սկզբնաւորութիւնք Բիւզանդական բանակաթեմերու դրութեան, *թրգ. Հ. Գարեգին Գարանֆիլեան, Վիէննա*, 1903) — *անջատ պետական քաղաքային բաժանումներէն — ցոյց կուտայ թէ ինչպէս Հայկական բանակաթեմը Հայաստանի հողին մէջ կազմուած, ինչպէս պարագաներու բերմամբ դէպի Արեւմուտք քշուած էր արաբական արշաւին հետ և իր անունն ալ տեղափոխուած։*

*Իսկ երբ Բիւզանդական պետութեան սահմանները կծկուելէ յետոյ, Լեւոն Իսաւրացի և իր յաջորդները ետ մղեցին մահմետականներու արշաւանքները, ինչպէս Թ. դարուն, Անատոլեան բանակը մասերու բաժնեցին նոյնպէս նաեւ հաւանաբար Հայկական մեծ բանակաթեմը ստորաբաժնեցին զանազան մասերու։*

*Իրմէն անջատուած են Սելեւկիոյ նման՝ սահմանապահ կոմսի մը իշխանութեան ենթարկուած* Քարսիանոն թեմը, *որ Ա. Գաղատիոյ և Ա. Կապադովկիոյ մասերէն կազմուած էր։ Սահմանապահ կոմսին նստոցն էր* Կապադովկեան Կեսարիա, *որ երբեմն Հայկական բանակաթեմին մէջ վաշտի* (Turma) *մը կեդրոնն էր* (H. Gelzer, «Themenvert·», *էջ* 96)։

*Կոստանդին Ծիրանածին որ դիտումնաւոր պատմագիր մըն է, հոս ալ կեղծիք մը ի գործ կը դնէ, այնպէս մը ցոյց տալով թէ Կապադովկիա հին ժամանակէն, այսինքն Յուստինիանոսի օրերէն բաժնուած էր երեք բանակներու։*

*Ահա իր տողերը.*

«Յառաջին ժամանակն կամ առ Յուստինիանոսիւ եւ կա՛մ առ այլով ոմամբ արքայիւ, Գամիրք (= Կապադովկիա) յերիս անձնիւր մասունս էին բաժանեալ: Միջին կողմն աշխարհին անուանէր Քարսիանոն (= Charison) յիշխանէ ումեմնէ Քարսիոն կոչեցելոյ — որ ընծայեցոյց զանձն երեւելի ի պատերազմունս մղեալս ընդդէմ պարսից — եւ յայս սակս իսկ աշխարհն այն անց

ի կարգս թեմից եւ զօրավարութեան, մինչեւ ցայսօր ժամանակի։ Ստորին մասն աշխարհին (Կապադովկիոյ), որ հայի ի ծովն՝ կոչէր Հայկական, վասն կից յաշխարհն Հայոց լինելոյ. իսկ վերնակողմանն՝ լեալ առ երի Լիկաւոնացւոց եւ Տաւրոսի, եղաւ անուն Փոքր Գամիրք, որ եւ է — որպէս ի վեր անդր ասացաք — ի կարգս թեմից»։

Այս կարգագրութիւններէն մին կամ միւսը Յուստինիանոսի ժամանակը եղած համարելու ամենեւին բանաւոր պատճառ մը չկայ, այլ լոկ ձրի ենթադրութիւն է, ինչպէս կ'ըսէ Գելցեր (Սկզ. Բիւզ. բան. էջ 14), որ բացորոշ կը յայտնէ թէ «Քարսիանոն թեմը, որ աւելի ետքերն էր հաստատուած, Հայկական թեմին մէկ մասն էր. իսկ Փոքր Գամիրք (= Երկրորդ Կապադովկիա) Անատոլեան բանակաթեմին կը վերաբերէր։ Ուստի եւ Կապադովկիոյ վերոյիշեալ երեք վիճակները՝ զորոնք Յուստինիանոս կամ հետագայ կայսրերէն մին՝ փոքրիկ վարչերու վերածած էր, երբեք մեծ զօրաբանակ կազմած չէին» (Նոյն, էջ 14)։

Այսպէս Գելցեր հերքելով Կոստանդին Ծիրանածինի չինած առասպելը՝ Քարսիան անուն դիւցազնէ մը առնուած ըլլալուն մասին իր անունը, այս թեմին՝ Հայկականէն բաժնուելուն պատճառը կը խորհի թէ բոլորովին ուրիշ բան մը ըլլալու է եւ զայն գտած ըլլալ կը կարծէ այն ըմբոստութեան մէջ որ Հայկական բանակաթեմին զինուորները յարուցին իրենց կայսրուհիին դէմ 793ին, պահանջելով որ իրենց նախկին պաշտօնանկ ընդհանուր հրամանատարը Ալէքս-Մուշեղ պատրիկը, վերահաստատուի։

Իրենք ո՛չ միայն չհամակերպեցան այլ աւելի ծանրացուց կացութիւնը վանդի «այսմ ամի (793—94) լուեալ Հայոց, եթէ (կայսրն Կոստանդինոս) ես խլել աչս զԱղեքսեայ, կալեալ զզօրավարս իւրեանց զԹէոդորոս եւ զԿամուղիանոս պատրիկ՝ արկին ի բանտ։ Իբրեւ զգաց լինէր այսմ թագաւորն, առաքէր ի վերայ նոցա զԿոստանդինոս Արտաշիր զփոխանակ–անձնապահապետ իւր եւ զՔրիստոփորէս զօրավար Բուկեղարացւոց, ընդ զունդս իւրաքանչիւր թեմիցն, զի ի հնազանդութիւն զնոսա ածեցին։ Իսկ Հայոց հարեալ նոցա ի դիմի, զերկոսին եւս զբռամբ ածին եւ կուրացուցին. բազումք անկան յերկոցունց կողմանց յառաջնում ամի ընդիկտիոնի, յամսեանն Նոյեմբերի . . . յետ հանդիսի Ս. Զատկի՝ կայսրն զամենայն համօրէն գումարտակսն զիւրաքանչիւր թեմիցն շուրջ զիւր առեալ խաղաց գնաց ի վերայ թեմին Հայոց մարտի պատերազմաւ։ Ի քսաներորդ եւթներորդ աւուր ամսեանն Մայիսի, յառաջնում ամի ընդիկտիոնի, յաւուր Կիւրակէի Պենտեկոստէից՝ հարան ընդ միմեանս. այլ նենգ գործեալ նիզակակցացն Հայոց մատնեցին զնոսա եւ կալեալ (կայսեր) զպատերազմն զամենայն, ես հատանել զգլուխ զԱնդրոնիկեայ՝ անձնապահի եւ զնոցին վարչապետի, զԹէոփիղեայ վարչապետի եւ զԳրիգորի եպիսկոպոսի Սինոպեցւոց քաղաքին։ Իսկ զոմանս ի մնացելոց անտի մատնեաց ի տանջանս եւ զայլս աքսորեաց։ Եւ հանեալ առս բիւրաւորս յամրոցէ անտի (Կողոնիայ) եմոյց զնոցա կապեալս ի քաղաքն ընդ դուռն Բղաքեռնացւոց։

Ի քսաներորդ չորրորդ աւուր Յունիս ամսոյ, յերկշաբաթւոջ, յերեսս իւրաքանչիւր ի նոցանէ սեւաղեղով դրոշմեալ նշանակէ՝ «Հայ նենգաւոր» եւ ցրուէ զնոսա ընդ Սիկիլիա եւ ընդ այլ կղզիս» (Թէոփանէս, 724–725)։

Զարաբարոյ մօրը ազդեցութեան տակ աննկարագիր կայսրը, իր իշխանութեան ամենահաւատարիմ նեցուկները այս կերպով փճացուց։

Հայկական բանակին դէմ ձեռքի առնուած այս խիստ միջոցները սկիզբը եղան այս բանակաթեմին գերակշիռ ազդեցութիւնը պակսեցնելու։

Այս տնօրինութիւններու կարգին անիկա ստորաբաժնուեցաւ և այսպէս անկէ կազմուեցան երկու նոր բանակաթեմեր Քարսիանոն և Խաղդիա (Պոլեպոնեան Պոնտոս և Փասիսի մէկ մասը կամ Հայկական Խաղդիքը)։

Ինչպէս Գելցերի այս տեսութիւններէն կը տեսնուի Քարսիանոն մինչև այն ատեն Հայկական թեմին մէկ վաշտն էր և յետոյ անջատ զօրաբաժինի վերածուեցաւ «սահմանապահ կոմս»ի հրամանատարութեան տակ։ Հարիւր տարի յետոյ է որ ան կը բարձրանար ընդհ. հրամանատարութեան (Գելցեր, Նոյն, էջ 46)։ Ռամսէյ, տարբեր կերպով կը բացատրէ Քարսիանոն թեմին կազմութիւնը։ Ան Հայկականէն չ'անջատեր, այլ Կապադովկեանէ, ինչ որ նուազ վաւերական կը թուի, սակայն իբր կարծիքը գիտունի մը որ Փոքր Ասիոյ տեղագրութեան մէջ հեղինակութիւն մը համարուած է, հարկ կը զատենք ներկայացնել։

Ան կ'ըսէ թէ երբ Վասիլ Ա. Մակեդոնացի Հայ կայսրը և իր յաջորդները գարձեալ ընդարձակեցին կայսրութեան սահմանները և մասնաւորապէս երբ Յովհաննէս Գուրգէն մեծ զօրավարը, Ժ. դարուն կայսրութեան սահմանները յառաջացուց Ալիսէն Տիգրիս, վերագրաւուած նահանգներուն մէջ կազմուեցան նոր թեմեր, որոնց ստեղծումը կը ցուցնէ Բիւզանդական բանակներուն աստիճանական յառաջացումը (հմմտ. Ramsay, էջ 316-317)։

Այս վերագրաւեալ երկիրները՝ մեծ մասամբ նախկին Հայկական բանակաթեմին հողերը, այլեւս Հայկական կամ Արմենեակ անունով չկոչուեցան, այլ ստացան տարբեր անուններ, Ուստի Հայկականին կից կազմուեցան դէպի Արեւելք փոքր տարածութեամբ և նուազ կարեւոր երկու թեմեր եւս Խաղդիք (Khaldia)(1) և Միջագետք(2) (Mesopotamia) անուններով։

Իսկ Հայկական բանակաթեմ կոչումը մնաց այն ընդարձակ տարածութեան վրայ որ ինչպէս ըսի, իր մէջ կը պարունակէր Տրապիզոնը, Ամասիան և Կեսարիան, ոչ անշուշտ անոր համար որ այդ վայրերը Հայաստան կը համարուէին Բիւզանդացիներէն, այլ անոր համար որ

---

(1) Խաղդիք՝ Տրապիզոնի շուրջն էր։ Թ. դարուն Խաղդիքի մէջ էր նաև Եկեղեաց գաւառը, բայց Լեւոն Զ. կայսրը զայն կցեց Միջագետքի թեմին (Ramsay, էջ 316)։ Խաղդիք անունը փոխած կրնայ ըլլալ իր նշանակութիւնը երբ կայսրութեան սահմանները կծկուած են։ Հերակլի ատեն Խաղդիք կրնայ նշանակած ըլլալ հիւսիս-արեւելեան սահմանագլուխի թեմը և կրնայ քիչ մը հաւանականութիւն ունենալ աշխարհագրականօրէն ճիշդ ըլլալու։ Անկարելի չէ որ Խաղդիք և Հայկական բանակաթեմերը Հերակլի ատեն սահմանագլուխի երկու թեմերը եղած ըլլան, բայց դժբախտաբար զօրաւոր փաստեր կը պակսին (Ramsay, էջ 316)։

(2) Միջագետքի բանակաթեմին համար։ ըսուած է թէ կազմակերպուած է Լեւոն Զ.ի կողմէ (Կոստանդին Ծիրանածին, Վարչութիւն Կայսրութեան, էջ 226) Կողոնիայէն առնելով Կամախը և Խաղդիքէն՝ Եկեղեացը։

անոնք իրենց այդ անունով բանակը ստիպուած էին քաշել այդ կողմ և այդ անունը պահելուն մէջ ալ անպատեհութիւն մը չէին տեսած, քանի որ նոյնիսկ յոյն պատմագիրներ (Կեներոնոս, Կոստանդին Ծիրանածին եւ այլ) իրենց խիտ Հայ բնակչութեան համար Հայաստանի մաս կը համարէին Կապադովկիան, Պոնտոսը, Լիկանտոսը և այլն, այնպիսի ժամանակամիջոցի մը (Ժ. դարուն) երբ այլեւս Հայկական բանակաթեմին իրեն ենթակայ հողամասերը բաժնուած էին զանազան հրամանատարութեանց, որոնք կը կոչուէին Կողոնիա(1), Սեբաստիա(2) Լիկանտոս(3) անուններով։

Ramsay, (էջ 316) շատ ուղիղ տեսութեամբ մը կ'ըսէ թէ «Թեմերը զուտ զինուորական բաժանումներ էին, եւ իրենց անունները բանակին մասեր ցոյց կուտային: Այս բաժանումները իրենց հին անունները կը պահէին երբ իրենց հին կայաններէն կը վանուէին եւ քիչ յետոյ իրենց անունները կուտային այն երջանակներուն ուր կը հաստատուէին կայսրութեան սեղմուած սահմաններուն մէջ»:

Այս մասին գեղեցիկ օրինակ մըն էր պատմութիւնը Կապադովկեան թեմին որ ի սկզբան այդ անունը կրող երկիրը կ'ընդգրկէր, բայց յետոյ Սանքարիոս (Սաքարիա) և Ալիս գետերուն միջեւ գտնուած երկիրը ունէր իր իրաւասութեան սահմանին մէջ և վերջապէս Ալէքս Կոմնենի ժամանակ միայն Ամորիոնի շուրջ գտնուող դաշտագետինները, որոնք Կապադովկիոյ մաս չէին կազմեր (Հմմտ. Ramsay, նոյն, Կոստանդին Ծիրանածին, Թեմորայք, էջ 216–250)։ Այս անունի փոխադրութիւնը հետեւանքը չէր աշխարհագրական կամայական կոչումի մը, Լեւոն Զ. Իմաստասէր կայսրէն տրուած (նոյն, էջ 317)։ Կապադովկիոյ կեդրոնը և հարաւակողմը կամ արաբներէն տիրապետուած էին կամ ենթարկըւած անոնց մշտատեւ արշաւանքներուն, այս պատճառով երկրին անունը բանակին հետ Ալիսի արեւմուտքը տարուած էր հոն կանգառնող զինուորներուն կողմէ։ Լեւոն Զ. եւ շտարաւ զայն

---

(1) Ըստ Ramsayի (էջ 317) Կողոնիայի նախ Հայկական բանակաթեմին մաս կազմելուն փաստը կու տայ Կոստ. Ծիրանածին (էջ 21) Նէոկեսարիան դնելով Հայկական թեմին մէջ, մինչ վերջը գիտենք թէ ան ստուգիւ կը գտնուէր Կողոնիա թեմին մէջ (նոյն, էջ 31)։ Այս թեմը 860էն առաջ կազմուած է (տես Թէոփանոս Շարայարեալ, էջ 181)։

(2) Նոյնպէս Հայկականէն բաժնուելով կազմուած է նոր թեմ մը, հին Արմենեակոն թեմէն դուրս, 860էն աւելի յետոյ։ Նախապէս Հայկական թեմին մէկ վաշտն (turma) էր և Լեւոն Զ.ի օրով թեմի մը վերածուեցաւ, երբ Լառիսայի վաշտը կը գանուէր անոր ստորադասուած (Ramsay, էջ 317)։

(3) Լիկանտոս եւս նախապէս Հայկական թեմի մաս կը կազմէր, արաբներէն նուաճուելէ առաջ։ Ասոր յիշատակութիւնը եղած է Թէոփասի կողմէ, որ ուրիշ ոչ մէկ թեմի յիշատակութիւնը ըրած է, որուն կարենար պատկանիլ ան, և կը խօսի Հայկական թեմի զօրավար Շապուհի (Sapor) մասին, որ իբր թէ կը բնակէր աւեն մը Մելետինէի շուրջ գտնուող մասերու մէջ (էջ 350)։ Ան կը խօսի նոյնպէս Կոկիսոնի մասին իբրև Կապադովկեան քաղաքի մը (էջ 124) և Կապադովկիան որոշ է թէ Հայկական թեմ մըն էր։ Լիկանտոս թեմի մը վերածուած էր Կոստանդինի օրով, աւելի ուշ քան 913 (Rams. էջ 317)։



դէպի իր հին երկիրը, այլ այնպէս մը կարգադրեց որ ան շարունակէր նշանակել Ալիսի և Սանքարիոսի միջեւ գտնուած հողամասը և զինուորները։ Միւս կողմէն Քարսիանոն վաշտը (Turma) Կապադովկիոյ հիւսիսը և Պոնտոսի հարաւը բոլորովին չէր դադրած գոյութիւն ունենալէ և իր անունը տարածած էր այն երկիրներուն վրայ՝ որոնք երբեմն Կապադովկիոյ թեմին մասն էին և բաժնուելէ յետոյ — արաբական տիրապետութեամբ — վերստին գրաւուած էին։ Լեւոն այնպէս մը ըրաւ որ ան ընդգրկէր բոլոր երկիրը արեւելքէն մինչեւ Կեսարիա և հարաւէն մինչեւ Տիանա (նոյն, էջ 317)։

Ինչպէս կը տեսնուի հոս Ramsay նոյնիսկ անոր Հայկականէն անջատումը կը մերժէ, սակայն շատ հաւանական է որ Գելցեր, որ յատկապէս ուսումնասիրած է Բիւզանդական բանակներու կազմակերպութիւնը, աւելի ճիշդ է իր տեսութեան մէջ, և Քարսիանոն որուն մէջ էր Կեսարիա, անջատուած է Հայկական բանակաթեմէն։

Քարսիանոն թեմին համար Իպն Խորդադբէ կ'ըսէ թէ բացի Խարշանա (خرشنة) գլխաւոր քաղաքէն, ուրիշ դեռ չորս ամրոց ունի։ Իսկ Կոստանդին Ծիրանածին (Թեմորայք, էջ 20) կ'ըսէ թէ ան ունէր չորս նշանաւոր քաղաք.

1. Կեսարիա՝ մայրաքաղաք
2. Նիւսա քաղաք
3. Թերմա »
4. Հռեգեպոդանդոս »

Այս չորս քաղաքները Հիերակղէս Սիւնեկդիմոսի Ա. Կապադովկիոյ մէջ յիշատակած քաղաքներն են (Գելցեր, Սկզ. Բիւզ. Բանակ. էջ 53։ Տես նաև վերը, էջ 213)։

Քարսիանոն թեմը կամ սահմանապահ հրամանատարութիւնը Թ. դարուն՝ արդարեւ Առաջին Կապադովկիոյ ունեցած տարածութեան կը համապատասխանէր։

Քարսիանոն բանակաթեմը՝ պարսից վրայ տարուած յաղթութիւններէն յետոյ, Լեւոն Ե. Հայկազնի (813–820) առեն — անշուշտ Եւդաթիոս զօրավարէն առաջ — Ստրատէգութեան աստիճանին կը բարձրանայ (Կոստանդին Ծիրանածին, Վարչութիւն Կայսրութեան, էջ 227)։

Լեւոն Զ. Իմաստասէր (886–911) Բուկելարիոն և Հայկական թեմերէն ընդարձակ երկիրներ անջատելով միացուցած է Քարսիանոնի թեմին, որ յետոյ մեծ ծաւալ ունէր (Հմմտ. Գելցեր, նոյն, էջ 53)։

Իսկ Հայկական բանակաթեմին համար Իպն Խորդադբէ կը նշանակէր թէ «ունի Կոլոնիա եւ տասնուվեց ամրոց» (նոյն, էջ 54) մինչ Կոստանդին Ծիրանածին, որ դէմ է այս թեմին Հայկական անուանակոչումին — ինչպէս ըսի — այսպէս կը սահմանէ անոր տարածութիւնը և վիճակները։

«Կապադովկիա Գ. որ այժմ Հայկական բանակաթեմ կը կոչուի, եօթը քաղաք ունի, Ամասիա, Իբովրա, Զաղիքոս, Անտրապա(1), Ամիսոս, Նէոկեսարիա, Սինոպէ»: (Թեմորայք, էջ 21)։

Եւ կաւելցնէ հետեւեալ շահեկան տեղեկութիւնները։

«Կողոնիա անառիկ եւ սեպ ամրոց մըն է եւ այս փոքրիկ քաղաքին անուամբ երկիրն ալ Կողոնիա կը կոչուի...: Սկիզբն է Փոքր Հայք, սկսելով Նէո-

---

(1) Արդի Գըրշէհիր։

կեսարիա քաղաքէն եւ Փաղակրոս անուն լեռնէն կը տարածուի մինչեւ Արաւրակացւոց քաղաքը... եւ կը հասնի մինչեւ Նիկոպոլիս եւ Տեփրիկէ... Այս է Կողոնիան» (Թեմուրայք, էջ 31) «Սեբաստիա թեմն ալ նմանապէս Բ. Հայքէն կ'սկսի» (Թեմուրայք, էջ 32)։

*Կոստանդին Ծիրանածին իր* «Վարչութիւն Կայսրութեան» *անուն գործին մէջ,* (էջ 225) *կը գրէ թէ* «Լեւոն Փիլիսոփայ կայսեր ժամանակ... Հայկական Թեմակալներէն՝ Փարսիանոն թեմակալերին անցուեցան հետեւեալ զինուորական վիճակները, տեղակալութիւն Կամադրոմեայ, տեղակալութիւն Տաքիայ»:

*Նոյնպէս կ'ըսէ* «Լեւոն Փիլիսոփայ կայսեր ժամանակ, Լարիսա՝ Սեբաստիոյ մէկ վիճակն էր» (Վարչութիւն Կայսրութեան, էջ 227)։

*Եւ վերջապէս* «Կամախ վիճակը՝ Կողոնիայի բերդն էր» (*Նոյն*, էջ 226)։

*Գելցեր կը գրէ թէ Կողոնիան եւս հաշուին մէջ առնելով՝* 16 *քաղաք թուած կ'ըլլայ Կոստանդին Ծիրանածին, հետեւաբար Իպն Խորդադբէի նշանակած թիւէն մէկ պակաս, որով իրարու կը համաձայնին։*

*Իսկ Կապադովկիոյ բանակաթեմին գալով, ինչպէս արդէն մասնաւոր կերպով չեշտեցի, Իպն Խորդադբէ, միակ բացառութիւնը ընելով իրարու ետեւէ շարած էր* 13 *վայրերու անունները (տես վերը) որոնք լուսաբանել դժուար էր վասնզի նախ ընդօրինակութեանց ատեն յաճախ սխալներ սպրդած են և երկրորդ արաբները սովորաբար տարբեր անուններ կուտային իրենց ծանօթ վայրերուն, այս պատճառով շատ դժուար էր զանոնք բուն տեղական անուններուն հետ համեմատել։*

*Կոստանդին Ծիրանածին* (Թեմուրայք, էջ 21) *կը յիշատակէ հետեւեալ քաղաքները.*

1. *Տիանա*
2. *Փաւստինուպոլիս*
3. *Կիւբիստրա*
4. *Նազիանզոս*
5. *Երիւսիմա (կարդա՝ Սասիմա)*
6. *Պառնասոս*
7. *Հռեգեդովրա*
8. *Մովկիսոս*
9. *Կորոն բերդը*

*Որոնցմէ միայն վերջինը Կորոն (Կոռա) բերդը յիշուած է արաբ մատենագիրէն առանց հաշուելու Կիւբիստրան որուն կ'ուզէ համաձայնեցնել Ռամսէյ Արաբ մատենագրին Զոստսթրունը կամ Դո'ւլ Կիլան, շատ երկբայելի կերպով։*

*Անշուշտ Իպն Խորդադբէի կողմէ յիշուած միւս գղեակներուն (Հասրին, Անտիգավա, Ալ-Աճրաբ, Մաջիդա, Բալանսա, Մալանդասա, Կունիա, Մալակուբիա, Բագալա, Բարբավա, Սալամուն) և Կոստանդին Ծիրանածինի յիշատակած այս քաղաքներուն մէջ նոյնացումներ կան սակայն շատ դժուար է այս մասին արտայայտուիլ։*

*Կոստանդին Ծիրանածին* (Վարչութիւն Կայսրութեան, էջ 225) *բացի այս քաղաքներէն կը յիշատակէ երկու շրջանակ* (Banda) *որոնք երբեմն Կապադովկիոյ թեմին կը վերաբերէին, և յետոյ Լեւոն, իր հայրը Քարսիանոնի հետ միացուց։*





Այս բոլորը կու գան հաստատելու թէ Կապադովկիա, Նախապէս կը գտնուէր մասամբ Անատոլեան կամ Արեւելեան բանակաթեմին՝ և մասամբ Հայկականին մէջ։

Այսպէս Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685–695) Երկրորդ Կապադովկիա, քաղաքային բաժանումը կը գտնուէր Անատոլեան կամ Արեւելեան բանակաթեմին շրջանակին մէջ, Պիսիդիայի, Լիկաոնիայի, Առաջին և Երկրորդ Փռիւգիայի, Ասիայի, Լիւդիայի, Կարիայի և Իսաւրիայի հետ։

Իսկ Առաջին Կապադովկիա քաղաքային բաժանումը կը գտնուէր Հայկական բանակաթեմին մէջ, Հելլեսպոնտոսի, Առաջին Հայքի, Յուստինիանա Չորրորդի, առաջին Գաղատիայի, Պոլեմոնեան Պոնտոսի, Փասիսի (Լազիկէ), Մեծ Հայքի, Ա. Բ. Կիլիկիաներուն հետ։

Անատոլեան բանակաթեմը՝ ինչպէս բացատրուեցաւ յետոյ բաժնուեցաւ (Ը. և Թ. դարերուն) չորս անջատ բանակաթեմերու.

1. Անատոլեան որ իշխանութեան տակ ունէր Պիսիդիա, Լիւկաոնիա, Բ. Փռիւգիա։

2. Տարկասիս՝ որուն սահմանին մէջ էին Ասիա, Լիւդիա, Կարիա, Ա. Փռիւգիա քաղաքային վարչութիւնները։

3. Կապադովկիան որը՝ կը համապատասխանէր Բ. Կապադովկիա քաղաքային բաժնման։

4. Սելեւկիա(1) որուն սահմանը կ'ընդգրկէր Իսաւրիա քաղաքային վարչութիւնը։

Իսկ Հայկական բանակաթեմը բաժնուեցաւ նոյն դարերուն երեք անջատ բանակաթեմերու։

1. Հայկական որուն մէջ էր Հելլեսպոնտոս և Մեծ Հայք։

2. Քարսիանոն որուն սահմանին մէջ էին Ա. Գաղատիա և Ա. Կապադովկիա քաղաքային վարչութիւնները։

3. Խալդիա որուն շրջանակին մէջ էին Պոլեմոնեան Պոնտոս և Փասիս(2)։

Իսկ Առաջին Հայք և Դ. Յուստինիանա (=Դ. Հայք) և Մեծ Հայք. և Ա. և Բ. Կիլիկիա կը գտնուէին առաբացւոց իշխանութեան տակ, թէև երբեմն երբեմն կարելի եղաւ անոնցմէ մէկ մասը վերագրաւել։

Լեւոն Գ.ի (717-741), Լեւոն Ե.ի (813-820) և Միքայէլի (820–829) և նոյնիսկ Լեւոն Զ. Իմաստասէրի (886-912) ժամանակ Առաջին Կապադովկիա և Առաջին Հայք քաղաքային վարչութեան նահանգները աւերակ էին և Կոստանդին Է. Ծիրանածինի (912–959) ժամանակ Առաջին Կապադովկիան կազմակերպուեցաւ իբր բանակաթեմ մինչ Նախապէս Սահմանապահ կոմսութիւն էր (Վարչութիւն Կայսրութեան, էջ 228)։

Այս բոլոր մանրամասնութիւնները՝ ամէնքն ալ Բիւզանդական և այլ ժամանակակից օտար աղբիւրներէ քաղուած կը հաստատեն թէ Է. դարէն շատ կանուխ իսկ, Եփրատէն Ալիս տարածուած հողամասերը Հայկական դարձած էին իրենց Հայ ստուար բնակչութեամբ և այս իրողութեան առջև Բիւզանդացիք այս շրջանակները կոչած էին

---

(1) Ասիկա առաջ սահմանագաւառ էր, յետոյ Ռոմանոս (920–944) Ժ. դարուն զայն զօրավարութեան բարձրացուց (Գելցեր, Սկզ. Բիւզ. Բանակ, էջ 73)։

(2) 696ին արաբներու անցած է։

Հայաստան կամ Հայք անունով, իրենց թէ՛ վարչական և թէ՛ զինուորական բաժանումներուն մէջ։

Իսկ Է. դարէն յետոյ Հայաստան Եփրատի կողմէն կ'ընդարձակուէր Արմենեակ թեմին կազմակերպութեամբ (տես J. Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886, Paris. 1919, էջ 302) և անկէ յետոյ, Եփրատի արեւմուտքը գտնուող և Հայոց երկիր նկատուած երկիրները հետզհետէ աւելի լայն սահման մը կ'ընդգրկէին և չէին դադրիր տարածուելէ Փոքր Ասիոյ մէջ դէպի հիւսիս, դէպի արեւմուտք և դէպի հարաւ, այնպէս որ օր մը կը ծածկէին բոլոր լայնքը Թերակղզիին Սեւ Ծովու եզերքէն մինչև Միջերկրական։

Արգէոսի շրջանակը՝ նոյնքան լի Հայերով, եթէ, ինչպէս տեսնուեցաւ, չէ գտնուած Հայք կամ Հայաստան նկատուած վարչական բաժանումներուն մէջ սակայն Հայկական բանակաթեմին մաս կազմած է։

Յոյները՝ որքան որ մոլեռանդութենէ մղուած չուզէին այդ երկիրներու ստացած հայկական նկարագիրը ընդունիլ, անիկա կը մնար բարձրակարկառ իրողութիւն մը որուն առջև կը խոնարհէին յաճախ ակամայ, հակառակ իրենց ժխտական դիրքին։

Գալով Հայ պատմագիրներուն և մատենագիրներուն— որոնց կարծիքը ցարդ չըսի— ճիշդ հակառակը ըլլալով, մղուած իրենց կարգին ազգայնական կամ մոլեռանդական նկատումներէ, կարծես թէ ջանք մը ունին Հայաստանի արեւմտեան սահմանները աւելի դէպի Փոքր Ասիոյ խորը առաջացնելու և մասնաւորապէս Կեսարիան առնելու հայրենակ կամ Հայաստանեայց աշխարհին մէջ, զայն դնելով Առաջին Հայք կոչուած նահանգի մը մէջ։

Մեր պատմագիրները չեն ճանչնար «Փոքր Հայք» անուն աշխարհ մը հակառակ անոր որ կը գործածեն «Մեծ Հայք» բացատրութիւնը։ Խորենացի, ինչպէս արդէն դիտել տուի, «Արեւմտեան մեր կողմն» կը կոչէ Եփրատէն անդին գտնուած երկիրները։

Խորենացիի վերագրուած Աշխարհագրութիւնը որ թարգմանութիւն մը կամ հետեւողութիւն մըն է Պտղոմէոսի և այլ օտար աշխարհագիրներուն գործերուն, և որոշ չէ թէ ո՞ր դարուն մէջ գիրի առնուած է, այս հայերէն խմբագրութիւնը, միայն երեք գաւառներ կը նշանակէ Փոքր Հայոց համար, որոնք կը զատէ Մեծ Հայքի 15 նահանգներէն։

Իր «Փոքր Հայք» բացատրութիւնը գործածելը երբեք ապացոյց մը չի կրնար համարուիլ անոր Հայոց մէջ գործածելի ըլլալուն, վասնզի ինչպէս ինքն ալ կը խոստովանի, զայն խմբագրողը, իր գործը օտար հեղինակներէ քաղած է և հետեւաբար այս օտարոտի բացատրութիւնն ալ անոնցմէ առած է։

Անիկա միեւնոյն ատեն փաստ մըն է թէ Հայոց պատմութեան և այս աշխարհագրութեան հեղինակը միեւնոյն անձը չէ, վասնզի պատմագիրը իր տեսութեամբ՝ որ Արամի աշխարհակալութիւնները նկարագրած ատեն կը պարզէ, ըսելով թէ իրեն հաճելի չեն յունական բացատրութիւնները, պիտի չուզէր զայն գործածել իր ուրիշ մէկ գործին՝ աշխարհագրութեան մէջ։

Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան մէջ՝ Փոքր Հայքի երեք գաւառներն էին։

«ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ՝ յելից կալով Կիլիկիոյ առ Տաւրոս լերամբ, ունի լերինս երիս, եւ գետս չորս եւ զդրունս երկու ելանելոյ Ասորւոց:



ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔ՝ յելից կալով առաջին Կապադովկիոյ, առ երի Երկրորդ Հայոց, եւ սահմանի յելից Եփրատաւ, եւ լեառն ունի զԱրգէոս, եւ գետս երեսուն, զԱլիս եւ զայլ մանունս:

ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔ՝ են որ կան յարեւելից Կապադովկիոյ եւ երկայն տարածի մինչեւ ցԵփրատ եւ ունի գետս երկու, եւ լերինս բազումս մեծամեծս քսան եւ երկու» (տես Մատենագրութիւնք նախնեաց, Խորենացի, 1843, Վենետիկ, էջ 603)։

Իսկ Չորրորդ Հայքը՝ այս աշխարհագրութեան մէջ դրուած է Մեծ Հայոց 15 փոքր աշխարհաց մէջ, ըսելով թէ «ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ յերի կայ Բարձր Հայոց եւ գաւառք են ի նմա ութ, Խորձէն, Հաշտեանք, Պաղնատուն, Բալահովիտ, Ծոփք, Հանձիթ, Դորէք, Դեգիք: Ունի բերդս եւ գետս, եւ լերինս, եւ բիւրեղ, ունի եւ երէս եւ հաւս եւ ձկունս եւ ի գազանաց առիւծ» (Նոյն, էջ 607)։

Խորենացիի անունով մեզի հասած այս աշխարհագրութիւնը, Մեծ Հայքի և Փոքր Հայքի դրացի կը դնէ Կապադովկիան (տես Նոյն, էջ 606) որ ըստ իրեն ունէր երեք բաժանում։

«ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԵՐԿՐՈՐԴ, յելից կալով Գաղատիոյ եւ առ երի Լիկոնիոյ, ունելով մանունս լերինս եւ գետս եւ լայնութիւն տարածեալ ի դաշտս ընդարձակս» (Նոյն, էջ 602):

«ԿԱՊԱԴՈՎԿԻԱ ԱՌԱՋԻՆ, յելից կալով Երկրորդ Կապադովկիոյ եւ առ երի Պողիմոնական Պոնտոսի որ ունի լեառն զԱնտիտաւրոս եւ այլ փոքունս, եւ գետս զՄելաս եւ զԱլիս» (Նոյն, էջ 602):

«ՊՈՆՏՈՍ ԿԱՊԱԴՈՎԿԻՈՑ, յելից կալով Պողիմոնական Պեղագոսին առ երի ծովուն զՄոսքական լերինսն, որ բաժանեն ընդ նա եւ ընդ Մեծ Հայք: Ունի լերինս եւ գետս երիս» (Նոյն, էջ 603–4):

Այս բաժանումները որ Խորենացիի կը վերագրուին, ինչպէս կը տեսնուին խմբագրուած են բոլորովին անջատ Պտղոմէոսի աշխարհագրութենէն որ չի ճանչնար Ա. Բ. Գ. և Դ. ՀԱՅՔ բացատրութիւնները։ Այդ տողերը գրողը գիտէ թէ այդ անուններով բաժանումներ կատարուած են, սակայն իր ներկայացուցածները ոչ մէկ կերպով կը համաձայնին ո՛չ Թէոդոս Ա.ի ո՛չ Թէոդոս Բ.ի, ո՛չ Յուստինիանոսի և ո՛չ ալ Մորիկի օրով կատարուած բաժանումներուն։

Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան բաժանումները որքան որ ալ յստակ չըլլան որոշ է թէ անիկա համաձայն ազգային աւանդութեան մը որ շատ հիմնաւորուած ըլլալ կը թուի Հայոց մէջ, Կեսարիան «Առաջին Հայք»ի մէջ դրած էր, քանի որ այդ բաժանումին մէջ կը զետեղուէր Արգէոս լեռը, որ այնքան մօտ էր Կեսարիոյ։

Խորենացիի Աշխարհագրութիւնը հետեւաբար քմածին բաժանումներ կը ներկայացնէր որոնք հեռու էին պատմական հիմէ, քանի որ Բիւզանդական պատմագիրներէ չէին հաստատուիր։

Հնագոյն Հայ պատմագիրը որ Կեսարիոյ և շրջակայից հայկական նկարագիր մը կուտայ, վաւերական կերպով Ե. դարուն մէջ գիրի առնուած Փաւստոսն է որ գիտէ— ինչպէս ըսի— որ Կեսարիոյ հետ 11 քաղաքներ երբեմն Հայոց կը վերաբերէին (տես վերը, էջ 207)։

Խորենացի որ ժամանակով աւելի ուշ է, տեսանք թէ ինչպէս կը մեկնաբանէր «առաջին եւ ճշմարիտ պատճառ»ը «վասն անուանելոյ զարեւմտեան մեր կողմն՝ Առաջին եւ Երկրորդ, այլ եւ Երրորդ եւ Չորրորդ Հայք» (տես վերը, էջ 204):

*Եւ նկատելի է որ Կեսարիան կը համարէ Առաջին Հայքի կեդրոնը ինչ որ հիմ չունի, քանի որ չի հաստատուիր ոչ մէկ օտար աղբիւրէ, ինչպէս տեսնուեցաւ։*

*Յովհաննէս կաթողիկոս՝ որ աչքի առջեւ ունեցած է Խորենացին, իր կողմէն աւելի կը ճշդէ Խորենացիին տուած բացատրութիւնները, որոնց տեղեր նշանակելով Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայոց համար։*

*Ահա իր բառերը։*

«Արամայ բազում արութիւն քաջութեանց մրցանաց պատմի եւ ընդարձակեալ ասի հարստահարութեամբ բազմաւ զսահմանս Հայոց հասարակ ընդ չորեսին ոլորտս երկրի. զի ըստ քաջափայլ հանդիսի առն զօրութեան, որք շուրջ զմեօք են ազգք՝ ի նորին անուն յարակցաբար Արմենեակս զմեզ անուանեն: Սա ոչ միայն զայս ոմանս դիւրադաւս, այլ եւ զԿապուտկեցիս եւս բազում արիական քաջամարտութեամբ ընդ իւրեաւ նուաճեալ սեպհականէր. եւ զկղիմայն զայն եւ զՊռոտովն ըստ իւրումն իսկ անուանն Արմէնի անուանէր, որ մինչեւ ցայսօր այս անուն յունականաւ անտի աշխարհին այնմիկ անուանի:

Իսկ յԱրմենէն յայնմանէ կոչեցելոյ մինչեւ ցկողմանս Պոնտացւոց՝ Առաջին Հայք զաշխարհ անուանեաց եւ ի Պոնտոսէ մինչեւ ցոլորտս քաղաքին Մելետինոյ, Երկրորդ Հայք եւ ի Մելետինոյ մինչեւ ցսահմանս Ծոփաց՝ Երրորդ Հայք եւ ի Ծոփաց մինչեւ ցքաղաքն Մարտիրոսաց եւ յաշխարհն Աղձնեաց արեւմտեաց՝ Չորրորդ Հայք. այս մինչեւ ցբնիկ սահմանս տէրութեան իւրոյ. իսկ զսեպհական եւ զբնիկ աշխարհ իւր համատարած, զայն Մեծ Հայք անուանէ» (*տես* Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսին. *տպ. Երուսաղէմ, էջ* 23–24)

*Վարդան վարդապետ, աւելի ուշ ժամանակներու պատմագիր մը, նմանապէս կ'ըսէ թէ Արամ* «ընդարձակեաց զսահմանս Հայոց, որ զԿապադովկացիս եւ զՊռոտոն եւ զկլիմայն ընդ իւրեւ նուաճեալ, Արամանեակ կոչէր: Եւ յԱրամանեկայ եւ ի Պոնտոս՝ Առաջին Հայք, եւ ի Պոնտոսէ ի քաղաքն Մելտենի՝ Երկրորդ Հայք, եւ անտի ի Ծոփաց գաւառն՝ Երրորդ Հայք, եւ անտի ի քաղաքն Մարտիրոսաց եւ յԱղձնիս՝ Չորրորդ Հայք, եւ զսեփական աշխարհն իւր կոչէ Մեծ Հայք» (Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի Լուսաբանեալ. *Վենետիկ*, 1862, *էջ* 14–15)։

*Այս բացատրութիւններէն ինչպէս կ'երեւայ Յովհաննէս կաթողիկոս և Վարդան վարդապետ՝ ըստ Խորենացիի* «Պռոտովն Առմէնի» *մը կը ներկայացնեն և անկէ անջատաբար Ա. Բ. Գ. և Դ. Հայքեր, և կ'անտեսեն* «Պռոտին Առմենիան որ թարգմանի՝ Առաջին Հայք» *բացատրութիւնը որ Խորենացին տուած է։*

*Ասիկա ճարտար հնարք մըն էր առանց Խորենացիին հակասելու և ազգային ինքնասիրութիւնը վիրաւորելու, աւելի մօտենալու իրականութեան, վասնզի Յովհաննէս կաթողիկոս և Վարդան վրդ. շատ լաւ գիտէին թէ Կապադովկիոյ մայրաքաղաքը Ա. Հայքի մաս չէր կազմած։ Արդարեւ եթէ քննելու ըլլանք այս երկու պատմագիրներուն ներկայացուցած բաժանումները պիտի տեսնենք թէ կատարելապէս համապատասխան են Մեծն Յուստինիանոսի* (527–563) *իր Մատեան Նորոց ԼԱ. հատած ժ.ով կատարած բաժանումներուն, որոնք ապահովաբար ծանօթ էին Խորենացիին ալ, սակայն ան չէ ուզած զանոնք նոյնութեամբ ներկայացնել, այլ ի զուր փորձած էր Կեսարիան Հայաստանի մէջ դնել իրեն ծանօթ ազգայնամոլութեամբ կամ*



*ազգային ինքնասիրութեամբ, որուն օրինակները բազում անգամներ տուած է իր գործին մէջ։*

*Իրեն մտայնութեան խիստ հաճոյական էր անշուշտ Հայաստանի մաս տեսնել Կեսարիան ո՛չ թէ միայն անոր համար որ անիկա Արեւելքի հռչակուած քաղաքներէն մին էր, լուսաւորութեան և առեւտուրի կեդրոն մը, այլ մանաւանդ անոր համար որ Կեսարիան երեւելի աթոռ մըն էր քրիստոնեայ Եկեղեցւոյ մէջ, ուրկէ Հայաստան ստացած էր իր լուսաւորութիւնը։*

*Նոյն այդ եռանդը չէ՞ր որ Խորենացիին Եդեսիան իր Աբգար թագաւորով Հայ դարձնել տուած էր, իր ազգին սեփականելու համար՝ միամիտ փառասիրութեամբ՝ անդրանիկ հաւատացեալ թագաւորն ունենալու պատիւը։*

*Յովհաննէս կաթ. և Վարդան վրդ. որոնք ճարտար դարձուածով մը Խորենացիին այս սխալը մասամբ դարմանած էին Ա. Բ. Գ. և Դ. Հայք բաժանումներէն դուրս թողլով սքողեալ կերպով մը* Պռոտին Առմէնիան *իր Կեսարիա մայրաքաղաքով, այլուր խօսելով Մօրիկի օրով կատարուած բաժանումներուն վրայ (տես Յովհաննէս կաթ. էջ* 84–89 *և Վարդան վրդ. էջ* 59) *կ'ստեղծեն քաոս մը և ազգային ինքնասիրութեան տենդէն կամ քրիստոնէական եռանդէն վարակուած, իրենք ալ Կեսարիան կը մտցնեն Հայաստանի մէջ։*

*Ըստ այսմ Մօրիկ Հայաստանը կը բաժնէր հետեւեալ նահանգներուն.—*

| | | |
|---|---|---|
| 1. Առաջին Հայք . . . . . . . | *մայրաքաղաք* | *Մելետինէ* |
| 2. Երկրորդ Հայք . . . . . . . | » | *Սեբաստիա* |
| 3. Երրորդ Հայք . . . . . . . . | » | *Կեսարիա* |
| 4. Չորրորդ Հայք *կամ* Յուստինիանոս | » | *Նփրկերտ* |
| 5. Մեծ Հայք. . . . . . . . . | » | *Կարին* |
| 6. Մեծ Հայք (*միւս*) . . . . . . | *Բասենէն մինչև Ասորեստան* | |
| 7. Խորագոյն Հայք . . . . . . . | *Տայք* | |
| 8. Ներքսագոյն Հայք . . . . . . | *մայրաքաղաք Դուին։* | |

*Ասոնցմէ* Ա. Բ. Դ. Մեծ, Խորագոյն *և վերջապէս* Ներքսագոյն Հայք *թէ՛ իբր բացատրութիւն և թէ՛ իբր տեղագրութիւն կատարելապէս նոյնն են Մօրիկի բաժանումներուն հետ։*

*Դուրս կը մնան* Երրորդ Հայք *և* Մեծ Հայք (*միւս*)։

*Ասոնցմէ վերջինը որուն համար Յովհաննէս կաթողիկոս իբր աշխարհագրական սահման կու տայ* «կողմանց անդի Բասենոյ մինչեւ ի սահմանս Ասորեստանի» *կը համապատասխանէ* «Չորրորդ Հայք (*միւս*) *կամ* Չորրորդ Յուստինիանա» *նահանգին որ Մօրիկ կազմած էր Դ. Հայոց մէկ մասը Բարձր Հայոց մէկ մասին հետ միացնելով և սով իրաւունք տուած՝ մեր պատմագիրին* «Մեծ Հայք» *կոչելու այս նահանգը։*

*Հետեւաբար կը մնար միայն քար գայթակղութեան* Երրորդ Հայք *նահանգը որ Մօրիկի բաժանումներուն մէջ գոյութիւն չունէր և որ Յովհաննէս կաթողիկոս ստեղծած էր, պարզապէս Կեսարիան Հայաստանի մէջ ունենալու համար, մինչդեռ բացորոշ էր որ Մօրիկ ջնջած էր* Երրորդ Հայոց *նահանգը և Մօրիկի ատեն Հայաստանի նահանգներն եօթն էին և ո՛չ թէ ութը, ինչպէս կը ներկայացնէ Յովհ. կաթողիկոս։*

*Սակայն աւելի զարմանալին կայ։*

*Յովհաննէս կաթողիկոս և Վարդան վարդապետ մոռնալով ինչ որ*

*ըրած են Արամին վերագրուած բաժանումներուն մասին, ակնարկութիւններ կ'ընեն Մորիկէն աւելի կանուխ եղած բաժանումի մը որուն համաձայն՝*

1. Առաջին Հայք *կը կոչուէր Սեբաստիա և շրջակայքը*(1)։
2. Երկրորդ Հայք *կը կոչուէր Կեսարիա և շրջակայքը*(2)։
3. Երրորդ Հայք *կը կոչուէր Մելիտինէ և շրջակայքը*(3)։
4. Չորրորդ Հայք *կը կոչուէր Մարտիրոսաց քաղաքը և շրջակայքը*։

*Երբ բաղդատելու ըլլանք պիտի տեսնենք թէ Յովհաննէս կաթողիկոս և Վարդան վարդապետ կը հակասեն իրենց նախապէս ըսածներուն հետ վասնզի բացի «Երրորդ» և «Չորրորդ» Հայքերէ որոնք անփոփոխ կը մնան, առաջին երկուքը փոփոխուած են,*

1. Առաջին Հայքը՝ *Բասեն, Գոնտոս և այլ շրջանակէն Սեբաստիա բերուած է*։

2. Երկրորդ Հայքը՝ *Սեբաստիայէն Կեսարիա տեղափոխուած է*։

*Դժբախտաբար Յովհաննէս կաթողիկոս որ ինքզինքն այնքան հոգածու ցոյց կու տայ ընթերցողը շփոթութեան մէջ չձգելու և կ'ըսէ* «այսորիկ սակս այսորիկ առ յինէն քեզ երկրորդեալ գրեցաւ, զի մի՛ տգիտութիւն ինչ ինձ վարկցես զայն, զոր յառաջագոյն առ յինէն քեզ պատմեալ եղեւ Առաջինն եւ Երկրորդն եւ Երրորդն եւ Չորրորդն Հայք» *ինքն կ'ստեղծէ շփոթութիւն մը, Արամի վերագրած բաժանումները նոյնութեամբ չպահելով և այդպէս միջանկեալ փոփոխութիւն մը գործադրելով, առանց լուսաբանելու և հակասաբար իր նախորդ ըսածներուն դարձեալ պնդելով թէ* «այն առաջինն ի մերոյն յԱրամայ քաջէ անուանեալ եղեւ, իսկ այս երկրորդ՝ ի Մօրկայ կայսերէ Հոռոմոց»:

*Հետեւաբար իրաւունք կու տայ մեզի խորհելու թէ Յովհաննէս կաթողիկոս, որ այնքան ճիշդ կերպով ներկայացուցած էր Մեծն*

---

(1) *Սեբաստիա Թէոդոս Բ.ի (408–450) օրով կատարուած բաժանումներուն մէջ Ա. Հայքի մայրաքաղաքն էր։ Յովհաննէս կաթողիկոս այս պարագային մոռնալով 536ին Յուստինիանոսի կատարած բաժանումները աւելի անդրագոյն վարչական բաժանում մը հիմ կ'առնէ փոփոխութեան, թերեւս իր աչքին առջև ունեցած աղբիւրի մը վրայ հիմնուած և մոռնալով իր գրածը։*

*Ջամիչեան (Բ. հատոր, էջ 523) կը հաւաստէ թէ Քաղքեդոնի ժողովի* (451) *պատմութեան մէջ (էջ 567 և 607) Սեբաստիա* Առաջին Հայոց *մէջ դրուած է։ Արդարև այլապէս չէր կրնար ըլլալ։ վասնզի այդ ժամանակամիջոցին Թէոդոս Բ.ի կատարած բաժանումներուն համաձայն Սեբաստիա Բ. Հայքի մէջ էր։ Նոյնպէս Ջամիչեան կ'ըսէ թէ վեցերորդ ժողովի* (691) *և Տրուլեան ժողովի* (692) *պատմութիւններուն մէջ (էջ 654 և 696) Սեբաստիա Բ. Հայքի մէջ նշանակուած է, ինչ որ դարձեալ ճիշդ է, 591ի կարգադրութիւնը աչքի առջև ունենալով։*

(2) *Ինչպէս տեսնուեցաւ Ջամիչեան (Բ. էջ 622) կ'արդարացնէ Յովհաննէս կաթողիկոսը ըսելով թէ Քաղքեդոնի և եօթներորդ ժողովներուն պատմութեան մէջ Բ. Հայոց մէջ նշանակուած էր Կեսարիան (տես վերը էջ 349)։*

(3) *Ջամիչեան (Բ. էջ 523) կը հաւաստէ թէ վեցերորդ ժողովին* (691) *պատմութիւնը Մելիտինէն կը դնէ* Առաջին Հայքի *մէջ, ինչ որ ճիշդ է եթէ նկատի ունենանք 591ի Մորիկի բաժանումները։*



*Յուստինիանոսի բաժանումները (տես վերը) յետոյ տարբեր ազդեցութեան մը տակ շփոթութեան մէջ ինկած է և ինքն իր մէջ հակասած է, և այս Կեսարիոյ պատճառով, վասնզի կ'երեւայ թէ ինքն ալ ի վերջոյ Խորենացիին չհակասելու համար, ուզած է Կեսարիան Հայաստանի մէջ տեսնել։*

*Այսպէս բոլոր այս ըսուածներէն որոշ կ'երեւայ թէ Խորենացիի վերագրուած պատմութիւնը և աշխարհագրութիւնը Կեսարիան կը դնէ* Առաջին Հայքի *մէջ, Յովհաննէս կաթողիկոս և Վարդան վարդապետ նախ կը դնեն զայն* Պռոդին Արմէնիի *մէջ, յետոյ զայն կ'ենթադրեն* Երկրորդ Հայքի *մէջ ի վերջոյ Մորիկի օրով ցոյց տալու համար փոխադրուած* Երրորդ Հայքի *մէջ։*

*Ինչպէս իրաւամբ դիտել կու տայ Հիւպշման* (Հին տեղւոյ անուններ, *էջ 49) Կապադովկիոյ վրայ ըսուածները սխալ են, վասնզի Կապադովկիա ո՛չ* Երկրորդ Հայք *անուանուած է երբեք և ո՛չ ալ* Երրորդ Հայք:

*Ինչպէս որոշ կը տեսնուի այս բոլորէն, աւանդութիւնները և զրոյցները դեր կատարած են մեր պատմագիրներուն ըրած բաժանումներուն մէջ, որոնք յաճախ քմածին են և պատմական հիմէ զուրկ, ինչպէս մասնաւորապէս Կեսարիոյ պարագային։*

*Անունները այս փոփոխութիւնը որ շարունակ կատարուած է Փոքր Ասիոյ մէջ Կայսերական հրովարտակներով սահմանուած բաժանումներով, Հայ պատմագիրներուն թոյլ տուած է քմածին և նպատակաւոր փոփոխութիւններ մտցնելու այդ նահանգներու բաժանման մէջ և ստեղծելու տեսակ մը քաոս։*

*Մասնաւորապէս մեզի շահագրգռող շրջանակը, Կեսարիան առնելով, կը տեսնենք զայն նկատուած մաս ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔԻ* (Խորենացի, *Ա. գպ. գլ. ԺԴ.* Վարդան, *էջ 14), ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔԻ* (Յովհաննէս կաթողիկոս, *էջ 88*, Վարդան, *էջ 59*, Պատմ. Քաղքեդոնի ժողովին, *էջ 607*, Պատմ. Եօթներորդ ժողովին, *էջ 403) և ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔԻ (Յովհաննէս կաթողիկոս, էջ 88), Յուստինիանոսի բաժանումներու մէջ, իբր թէ Մորիկէն սկսեալ։ Հետեւաբար շատ որոշ է թէ Փոքր Հայքի նահանգային բաժանումները —որոնք յունաց մէջ անփոփոխ չեն եղած— ժամանակին և հեղինակին համաձայն տարբեր գործածութիւններ ունին և մասնաւորապէս Հայ պատմագիրներու գրչի տակ բաւական քմածին մեկնութիւններ։*

*Այնպէս որ յետնագոյն ժամանակի քննասէրներն ալ չեն կրցած որոշ եզրակացութեան մը գալ, և Հ. Միքայէլ վրդ. Ջամիչեան, Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան և Հ. Ղեւոնդ վրդ. Ալիշան հմուտ Մխիթարեաններ, որոնք զբաղած են Հայաստանի աշխարհագրութեամբ, խոհեմութիւն համարած են որոշ սահմանումներ չընել։*

*Ջամիչեան նոյնիսկ իրար հակասող տեղեկութիւնները ամփոփելէ յետոյ* «յայսպիսի շփոթ բանից… չկարացեալ մեր զհաւաստին ստուգել» *կ'ըսէ* «թողեալ (*եմք*) զիրսդ քննութեան քաջահմուտ աշխարհագրաց» (*Բ. հատ. էջ 524*)։

*Ասով հանդերձ Ջամիչեան իր աշխատութեան վերջը (Գ. հտ. յաւելուած, էջ 161) կու տայ Ա. Բ. և Գ. Հայոց համար սահմաններ որոնք իրմէ յետոյ եկողներուն կողմէ նուիրագործուած են, հակառակ անոր որ հմուտ պատմագիրը բաց դուռ մը ձգած էր Գ. Հայքի վրայ խօսած ատեն* «սա յոմանց երկրորդ Հայք կոչի, որպէս եւ երկրորդն երրորդն եւ այլ» *(Նոյն) այնպէս որ կ'ընդունի թէ հաստատուն չէ իր սահմանումը։*

Օտար ուսումնասէրներէն Saint Martin (Ա. էջ 185–197) եւս Զամիչեանի կը հետեւի, այնպէս որ գրեթէ անոր տեսութիւնը հաստատուն ձեւ մը կ'առնէ նոր ժամանակներու մէջ։

Օրմանեան՝ Հայաստանի հին տեղւոյ անունները արդի կոչումներով ներկայացնող աշխատութեան մը մէջ (ՀԱ. 1909, էջ 85-89) այդ նուիրագործուած բաժանումներուն կը հետեւի, Կեսարիան(1), Պիզուի(1), Ծամնդաւի(2), Սասիմիայի(3), Նիւսայի(2), Տիանայի(3), Կիբիստրայի(1), Նազիանզի(2), Կասիրայի(3) հետ ներկայացնելով Ա. ՀԱՅՈՑ մաս։

Նկատողութեան արժանի է որ նոր ժամանակներու ուսումնասիրողներն ալ համաձայն չեն, վասնզի Հ. Թաջունի, Ա. Հայքի մէջ կը դնէ Նէոկեսարիա քաղաքը եւս և Օրմանեանի կողմէ Բ. Հայքի մէջ դրըուած Նիկոպոլիս, Եւդոկիա, Զիլէ եւ Կոմանա քաղաքները մաս կը համարէ Ա. Հայքի:

Լէօ եւս Նիկոպոլիս և Եւդոկիա քաղաքները դրած է Ա. Հայքի մէջ։

Ինչպէս կը տեսնուի նորագոյն հեղինակներն ալ համաձայն չեն և իրարմէ տարբերութիւններ ունին, և ամէնն ալ վարանումի մէջ են (տես Թաջունի, Աշխարհ. էջ 108, Լէօ, Հայ Հայրենիք, էջ 112) և յաճախ արձագանգ կ'ըլլան աւանդութեան, որ ինչպէս տեսնուեցաւ յամառօրէն Կապադովկիոյ մայրաքաղաքը պատմական որոշ շրջանէ մը յետոյ, կը մտցնէր Հայկական կամ Հայաբնակ երկիրներու ծիրին մէջ, զայն երբեմն Առաջին, երբեմն Երկրորդ և վերջապէս Երրորդ Հայքի մէջ զետեղելով, բոլորովին քննադատութեան չտոկացող բացատրութիւններով։

Գ.

## ՀԱՅՈՑ ՏՆՏԵՍԱԿԱՆ, ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԴԵՐԸ ԵՒ ԸՆԿԵՐԱՅԻՆ ԴԻՐՔԸ ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՄԷՋ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ

Հայերը որոնց թիւը կ'աճէր բովանդակ Բիւզանդական կայսրութեան մէջ ամէն օր, անշուշտ իրենց նոր բնակավայրին մէջ հետզհետէ իրենց համար դիրք շինեցին և ինչպէս Լօռան կ'ըսէ ոմանք հարըստացան, եղան մեծ հողատէր-կալուածատէրներ, հրամայեցին բանակներու և նահանգներու, դեր կատարեցին կայսրութեան կառավարութեան մէջ և բարձրացան նոյնիսկ, Կ. Պոլսոյ գահը։

Պատմութիւն որ հիներու քով յաճախ պատերազմական դէպքերով հիւսուած է, մեզի հասուցած է բազմաթիւ հայ զինուորական մեծ դէմքերու անունները և գործերը, մինչ շատ դոյզն տեղեկութիւն՝ զանգուածներու քաղաքացիական կեանքին վրայ, որ չէր կրնար աննշան ըլլալ, այդ նահանգներուն մէջ որ այնքան մեծ թիւով զինուորներ կու տար, կերտելու համար Բիւզանդական կայսրութեան փառքը և մեծութիւնը։

Անկարելի է կարծեմ երեւակայել թէ այդ գաղթականները զինուոր արտադրելու հանքեր էին միայն և ճարպիկ, տաղանդաւոր և գործունեայ այդ Հայերու զաւակներէն ուրիշ ասպարէզներու ընդունակ մարդիկ չէին ծնիր։

Ընդհակառակը ինչ ինչ ցուցումներ կը հաստատեն թէ Հայերը, զինուորական ասպարէզէն դուրս քաղաքացիական այլ մարզերու մէջ ալ ցոյց տուած են յաջողութիւններ, որոնց մասին ցանցառ յիշատակութիւններ մեզի հասած են։

Հայոց Բիւզանդական կայսրութեան և մանաւանդ մեզի շահագրըգռող Անատոլուի և մասնաւորապէս Կեսարիոյ շուրջը, կարեւոր դիրք մը գրաւած ըլլալուն գլխաւոր ապացոյցներէն մին կը հայթայթէ Լեւոն Գ. Իսաւրացիի (717-741) իր կայսերակից Կոստանդին որդւոյն հետ կազմած «ընտրութիւն օրինաց»ը։

Այդ օրինագիրքին երկրագործութեան վերաբերեալ մասը (nomos georgikos) կը կանոնաւորէր հողատէրներու և ազատ հողատէր գիւղական համայնքներու յարաբերութիւնները վարձակալներուն հետ, որուն պէտքը բացայայտ է թէ ծնունդ առած էր օտար գաղթականութեան արտակարգ աճումէն, որոնց մէջ Հայոց թիւը, մանաւանդ Փոքր Ասիոյ մէջ, չէր կրնար աննշանակ մնալ։

Այս օրէնքէն կը հասկցուի թէ գաղթականները պարզապէս հողին հետ միացած գալութներ են, անձնապէս ազատ ըլլալով՝ մինչ բնիկները անձնական ազատութենէ ալ զուրկ էին և հողատէրին սեփականութեան մաս կը կազմէին (Գելցեր, էջ 155), ըստ այն կարգադրութեան որ Կապադովկիոյ Հռոմէական կայսրութեան կցուելէն և Գերմանիկոսի մահէն յետոյ Տիբերիոս կայսեր կողմէ հոն իբր Նուիրակ (Legat) ղրկուած Վերանիուս ըրած էր։ Այս Նուիրակին առաջին գործը եղած էր կայսերական կալուածին միացնել, Կապադովկեան արքայական գերդաստանին ամբողջ ստացուածքները, որոնց մէջ աշխատող բոլոր Կապադովկացիքը նկատուեցան կալուածապատկան ստրուկներ (serf), այնպէս որ երբ կալուած մը ծախուէր, անոր մէջ գտնուող մարդ, ձի, ոչխար, և այլ, իբր անոր լրացուցիչ մասը միասին կը ծախուէին։

Այս դրութիւնը պահուած էր նաև Բիւզանդական կայսրութեան շրջանին։ Հայ գաղթականները՝ որոնք նոր կու գային հոն հաստատուիլ, իբր ազատ ու ոչ-ստրուկ կ'ստեղծէին անհաւասարակշռութիւն մը որուն դարման տանիլ կ'աշխատի Լեւոն Իսաւրացի։

Ասիկա Հայերու ստացած կարեւորութեան մէկ նշանն էր, որ յաջորդ դարերուն ա՛լ աւելի պիտի չեշտուէր, մանաւանդ Թ. դարէն յետոյ, երբ Վասիլ Հայկազն Մակեդոնացի 867 Սեպտեմբեր 24ին միահեծան վեհապետ կը դառնար։ Այլեւս 300 տարիներ, Հայ ցեղը պիտի կատարէր գերազանց դեր մը, միակ ղեկավարը և մարտիկ ոյժը հանդիսանալով կայսրութեան, մանաւանդ յաջորդ Ժ. դարուն երկրորդ կիսուն, երբ ո՛չ միայն կայսերական գահուն կը տիրանան յաջորդաբար երեք Հայ կայսրեր, Նիկեփոր (963–969), Յովհաննէս Զմշկիկ (969–976), և Վասիլ Պուլկարսպան (976–1025), այլ պետութեան մէջ ամէնէն գործօն դեր կատարող տարրը Հայերը կը հան-

(1) St. Martin, Հ. Մանուէլ Թաջունի (Աշխարհագրութիւն հին եւ նոր Հայաստանեայց. Վենետիկ, 1857) և Լէօ («Հայ Հայրենիք». Թիֆլիս, 1915) համաձայն են իրեն հետ։

(2) Թաջունի և Լէօ համաձայն են։

(3) Այլոց կը պակսի։

դիտանան։ Արքունիքը և բանակը, ինչպէս նաև ազգեցիկ եկեղեցականութեան մէկ կարեւոր մասը, Հայեր էին կամ Հայածին յոյներ, որոնք առաւելապէս խիստ բազմաթիւ էին այն զինուորական գաղութներուն մէջ, որոնք Բիւզանդական կայսերը իրենց նոր տիրապետած կամ աւելի ճիշդ բացատրութեամբ, արաբներէն վերագրաւած, երկիրներուն — մասնաւորապէս Եփրատէն ասդին և Տաւրոսի ստորոտը— կազմակերպած էին աւատական դրութեամբ(1) և զանոնք յանձնած Ակրիտներու կամ սահմանապահ իշխաններու։ Անոնք ժառանգական տէրերն էին իրենց տրուած հողամասերուն որոնց բնակիչները պարտաւորեալ զինուորներ էին (տես Ն. Քարամեանցի «Յովհաննէս Չմշկիկ կամ Կիւռժան Բիւզանդական Հայ կայսրներից մէկը. ԼՈՒՄԱՅ, Դ. տարի, 1899, բ. գիրք, էջ 69)։

Ժ. դարուն Ասիական Ակրիտեան թեմերու գլխաւոր իշխանները Հայեր էին, ինչպէս Տայքի, Ճահանի կամ Լիկանտիոյ, Լոգոնիոյ, Միջագետքի և Կապադովկիոյ իշխանները։

Այդ գաղութներուն մէջ այնքան շատ էին Հայերը որ Նիկեփոր Փոկաս կայսեր (963–969) մէկ օրէնքը յատկապէս Հայոց կը վերաբերէր (տես Ն. Քարամեանց, նոյն, էջ 57)։

Այսպէս Բիւզանդական կայսրութեան մէջ, մասնաւորապէս անոր արեւելեան սահմաններուն վրայ և յատկապէս Կապադովկիոյ մէջ առաջ կու գային Հայ ճորտեր և մեծ կալուածատէրներ, արքոններ, ցեղապետներ, հարուստներ (δυνάτοι), որոնք կը հարստահարէին փոք-

(1) Դարուն ոգին անզգալաբար թափանցած է Բիւզանդական կայսրութեան մէջ և անոր տուած է աւատապետական վարչաձև, որ դարուն տիրող կարգն էր Եւրոպայի մէջ։ Դիտելի է որ երբ Բիւզանդիոն արաբներու դէմ փառաւոր յաղթութիւններով իր կծկուած սահմանները նորէն ընդարձակեց Ժ. դարուն և հասաւ Հայաստանի սահմանները, Հայաստանի բարձրաւանդակին վրայ արաբ լուծը թօթափելով կազմուած իշխանութիւնները, որոնք զօրաւոր ապաւէնի մը կը կարօտէին, գրեթէ ինքնաբերաբար ինքզինքնին Բիւզանդիոնի կայսերներուն տրամադրութեան տակ դրին և անոր կապուեցան և անոր պաշտպանեալներ եղան։

Բագրատունեաց հարստութիւնը որ շուրջ 920ին Աշոտ Բ. Երկաթի ձեռքով, իր իսկական անկախութիւնը ձեռք բերած էր, և իր պետերը «Շահնշահ» կամ «արքայից արքայ» տիտղոսը կը կրէին, աւատապետի դիրք մը ունենալուն համար հանդէպ իրենց շուրջը կազմուած պզտիկ իշխանութիւններուն, Բիւզանդական կայսրերէն կը կոչուէին «հոգեւոր որդի կայսեր» և «իշխանաց իշխան Հայաստանի»:

Անոնք պետ էին Վասպուրականի, Կարսի և Աղուանից թագաւորներուն և իշխաններուն և մի քանի մահմետական էմիրներու։ Սակայն անոնք ալ իրենց կարգին եթէ ո՛չ ճորտ գէթ դաշնակից մը կը համարուէին Բիւզանդական կայսրութեան, որուն դիւանները միօրինակաբար մինչև Կովկասի ստորոտը տարածուած բոլոր Հայ և Վրացի անկախ իշխանութիւններու պետերը արխոն (= իշխան) անունով կը ճանչնային և կը համարէին կայսրութեան ճորտերը (vassal)։ Բագրատունի թագաւորէն զատ միայն Վասպուրականի իշխանը եւս բացառաբար «իշխանաց իշխան» կը կոչուէր և վրաց թագաւորը «կիւրա-



րիկ կալուածատէրները, կը կապտէին անոնց հողերը և կը յաջողէին այսպէս ունենալ ամբողջ գաւառակներ (C. Bayet, Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 446)։ Այս հարուստները, կալուածատէրները և մեծամեծները երեւելի կը հանդիսանային ո՛չ միայն իրենց հարստութեամբ այլ նաև իրենց իմացականութեամբ և տաղանդով։

Կապադովկեան երկիրին մէջ հաստատուած Հայ ազնուական ընտանիքներուն ամէնէն հիներէն և շատ յիշուածներէն մին էր Մամիկոնեան տունը որ Ը. դարուն կէսերը փոխադրուած էր Արմենեակ թեմին մէջ (տես Բրոֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, Թ. 6)։

Հոն մեծ դիրք և ազդեցութիւն ձեռք բերած էին Փոկասները(1), որոնք այնքան մեծ զինուորականներ տուած են պետութեան, և իրենց ազդեցութեամբ նոյնքան ալ մեծ դժուարութիւններ պատճառած են կեդրոնին, երբ դէմ կանգնած են կայսրութեան։

Կապադովկեան ծագում ունէին նաև Գուրգէն կամ Գուրգուաս կամ Չմշկիկ հայ ընտանիքները, որոնք Փոքր Ասիոյ ամէնէն ազնուական ընտանիքներն էին (Abbé Albert Vogt. Cambridge Med. History. Դ. հտ. էջ 69)։

Կապադովկիոյ մեծ կալուածատէրներուն շարքին կը պատկանէր նաև Մելեսինոս ընտանիքը որուն բնակավայրն էր Քարսիանոն(2)։

---

պաղատ» (Curopalate) կամ «Բիւզանդական պալատին մարաջախտ»։ Այս վերջինը իր գլխաւորութեան տակ ունէր առանձին միութիւն մը, ենթակայ ունենալով վրական փոքր իշխանութիւններ։ Բացի Բագրատունի արքայից արքայէն, Կոստանդին Ծիրանածինի խմբագրած Արարողութեանց գիրքը կը թուէ նաև ճորտ 9 հայ և 5 վրական իշխանութիւններ։ Կային թերեւս ուրիշներ որոնք չեն յիշուած։

Այս իշխանները կը խնդրէին և կ՚ստանային կայսրէն նպաստներ, տիտղոսներ և պատիւներ, և կայսրութեան նեցուկներն էին, սակայն միշտ կասկածելի, միշտ սպառնացող բաժնուելու, եթէ օգնութիւն չղրկուէր իրենց զօրքով և դրամով։

Այնպէս որ եղաւ առեն մը որ Բիւզանդիոն դարձաւ իսկապէս աւատապետական կեդրոն մը, որուն ճորտերն էին Տաւրոսէն մինչև Կովկաս տարածուած հողերուն մէջ կազմուած մեծամասնութեամբ Հայ և մի քանի վրացի և մահմետական փոքր իշխանութիւններ, որոնք երկու դասի կը բաժնուէին, Ա. անոնք որոնք ինքնաբերաբար Բիւզանդական հովանաւորութեան ապաստանած էին և աւելի դաշնակցի հանգամանք ունէին, ինչպէս Բագրատունի, Արծրունի և այլ իշխանութիւնները և Բ. Բիւզանդական պետութեան իսկ ձեռամբ կազմուած զինուորական գաղութները կամ Ակրիտները, որոնք հաւաքաբար կը ներկայացնէին թշնամիներուն դէմ, զօրաւոր միութիւն մը, որուն մէջ եթէ կէս-անկախ երկիրները — թէև կասկածելի դաշնակիցներ — կը կազմէին Բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան առաջին գիծը, Ակրիտները իբր կայսրութեան ձեռակերտները կը ներկայացընէին անոր ապահովութեան աւելի վստահելի մէկ ամբարտակը։

(1) Ասոնց Կապադովկեան ծագումը կը հաստատէ Կեդրենոս Բ. էջ 494։

(2) Ասոնց Կապադովկեան ծագումը կը հաստատէ Յովհաննէս Անտիոքացի,] էջ 2։

Կապադովկիացի էր հաւանօրէն նաև Սքլերոս ընտանիքը։

Այս բոլոր մեծ ընտանիքները ամէնքն ալ իրարու հետ ազգականական կապերով միացած(1), կը ներկայացնէին գերազանց ուժ մը։ Կապադովկեան մեծ ընտանիքներէն էին նաև Արկիրոսները(2)՝ որոնցմէ էր Ռոմանոս Գ. (1029–1034) (Schlumberger. Ep. Բ. էջ 323)։

Իսկ Կապադովկիոյ շուրջ կամ Արմենեակ թեմին մէջ ԺԱ. դարուն կային ուրիշ մեծ ընտանիքներ, ինչպէս Տալասէնները (Կենտրենոս, Բ. էջ 404), Կողոնիոյ Kékauménosները (Կենտրենոս, Բ. էջ 625), Դարսիան թեմէն՝ Տիօժէնները (Ատտալիատէս, էջ 146, 99, 170, Սկիլիցէս, էջ 665) Անատոլեան թեմէն Պօղանիատէսները (Ատտալիատէս, էջ 256, 185) և Պուրցէսները (Յովհաննէս Անտիոքացի, էջ 2) որոնց Հայկական ծագման մասին մեզի տեղեկութիւններ կը պակսին, հակառակ հաւանականութիւն ունենալուն։

Այս մեծ ընտանիքներու գոյութիւնը՝ յեղաշրջած էր Փոքր Ասիոյ ընկերային և քաղաքային ոյժին ուղղութիւնը, որ քաղաքներէն դղեակներու, երբեմն գերիշխան քաղաքացիներու դասակարգէն ազնուապետութեան մը— որ կը նմանէր բացի միակ տարբերութենէ մը Արեւմտեան լատին աւատական ազնուապետութեան — կը փոխանցուէր։ Ինչպէս Արեւմուտքի մէջ, ան ունէր անսահման տարածութեամբ կալուածներ, ուր սեփականատէրները միանգամայն էին հողին տէրերը, զինուորական ոյժին պետը և գիւղացի բնակչութեան տէրերը։ Ինչպէս Արեւմուտքի մէջ, անդադար կռուող այս մեծ տէրերը (seigneur) կը վարէին գիտցուածէն աւելի դժնեայ կեանք մը, արաբական արշաւանքէն յետոյ։



ՌՈՄԱՆՈՍ Ա.
ԼԷԿԱԲԷՆԻ ԴՐԱՄ
( 920 – 944 )

Բայց Բիւզանդական ազնուականները, իբր ժառանգորդները քաղաքակրթական և մշակութային երկար անցեալի մը, գիտէին աւելի լաւ օգտագործել իրենց խաղաղ ժամանակները քան Ֆրանքները կամ ժէրմէնները։ Անոնք որովհետև յաճախ կռիւի մէջ էին, չէին դադրած շահագրգռուելէ մտաւորական կեանքով, և հետեւաբար բարբարոս չէին դարձած։ Ասոնք ունէին դեռ բաւական միջոցներ զարգանալու և մշակոյթի, ըմբոշխնելու համար վայելքները գրականութեան և արուեստին։

Կայսրութեան պաշտպանութեան իրենց թողած հանգիստի ատեն-

(1) Յովհ. Զմշկիկ հօր կողմէ ազգական էր Կուրգէններու և մօր կողմանէ Փոկասներու (Gustave Schlumberger. l'Epopée Byzantine. էջ 3), և փեսան՝ Սքլերոսներու (Վարդ Սքլերոս իր աներձագն էր)։

Մագիստրոս Եւստաթիոս Մալեսինոս, Փոկասներու ազգական տան մը շառաւիղն էր (L'Epo. Byz. I. 368)։

(2) Argyrus կամ Արկիւրոպուլոս ընտանիքին ծագումը ոմանք կը պնդեն թէ Հայ Արծրունիներէն էր (Schlumberger. Epopée Byz. Գ. էջ 63)։



ներուն մէջ, կը զարդարէին իրենց տուները(1), այդ պահերը կ'օգտագործէին զբաղելու համար յունական հարուստ գրականութեամբ, կամ կը խմբագրէին իրենք իսկ գիտական, կրօնական և պատմական գործեր։

Ասոնց առընթեր, քաղաքներու բնակիչները կ'օգտուէին պարգեւուած ապահովութենէն վերստին ձեռք առնելու համար յաջողութեամբ իրենց վաճառականութիւնը կամ ճարտարարուեստը։

Երկրին տնտեսական գլխաւոր կեդրոնները գտած էին մասամբ իրենց բնակչութիւնը, իրենց հարստութիւնը և իրենց բարգաւաճումը։

Փոքր Ասիոյ մէջ կ'ապրէր Արեւելեան կայսրութեան իրական ոյժը։ Հոն տեղափոխուած էր գրեթէ ամբողջութեամբ առեւտրական և երկրագործական հարստութիւնը միապետութեան։

Բիւզանդական կայսրերը հոնկէ կը հաւաքէին իրենց լաւագոյն և ամէնէն բազմաթիւ զինուորները։

Հոն կ'ապրէր Բիւզանդական ազգին յարաբերաբար երջանիկ, բարգաւաճ և զօրեղ հատուածը։

Դէպի 1050, Բիւզանդական Ասիան այսպէս ստացաւ մեծ կարեւորութիւն մը կայսրութեան մէջ, իր նիւթական բարգաւաճումով, և իր բնակչութեան թիւով և արժէքով, մինչ 30 տարի յետոյ թրքական արշաւանքները զայն կատարեալ անապատ մը պիտի դարձնէին։

Կապադովկեան հայ մեծ ընտանիքները որոնք դարձած էին մեծ սեփականատէրներ, իբր ոյժ և իբր ազդեցութիւն եթէ իրենց տեղւոյն վրայ օգտակար եղած են, սակայն երբեմն կեդրոնական իշխանութեան դէմ դառնալով, կատարած են վնասակար դեր և մշտատեւ սպառնալիք մը հանդիսացած։

Այնպէս որ Ժ. դարուն կայսրերը հարկադրուեցան կռուիլ իրենց սահմանադրութիւններով կամ օրէնքներով (Novelles) հարուստներու յառաջդիմութեան և յափշտակութիւններուն՝ ինչպէս նաեւ վանքերու բազմապատկութեան և անոնց կալուածներուն անսահման տարածման դէմ (C. Bayet. Դուրեան, Ազգ. Պատմ. էջ 446)։

Առաջինը անոնց եղաւ, Ժ. դարուն, Ռոմանոս կայսրը (920-944) որ կրցած էր իր պետութիւնը պատկառելի դարձնել, բոլոր սահմաններուն վրայ յաղթանակներ շահելով։ Ան ջանաց նաեւ պետութեան տնտեսական վերածնունդը կերտել, զբաղելով հողատիրութեան հարցով, որպէսզի փրկէ աղքատները հարուստներու ճնշումէն։

Մեծ կալուածներու աւելնալը կործանիչ էր պետութեան։ Ռոմանոս որ կ'ըսէր թէ հպատակներուն պաշտպանութիւնը բռնակալ-

(1) Մեծամեծները կ'ապրէին պերճ և արուեստով զարդարուած տուներու մէջ, ինչպէս Դիքենիս Աքրիտաս (Digénis Akritas) կը բնակէր Եփրատի եզերքը (Charles Diehl. Figures Byzantines Բ. էջ 312)։ Դեգենիս Աքրիդաս դիւցազներգութիւն մըն էր որ կը պանծացնէր արաբներու դէմ պատերազմին դիւցազուններէն մին։ Դիգենիս բառը ըստ Դուրեան պատրիարքի (Ազգ. Պատմ. էջ 442) է յունարէն և կը նշանակէ երկսռնմիկ, վասնզի Աքրիտաս դիւցազնին մայրը յոյն իշխանուհի մըն էր Դուկաս անուն և հայրն էր Եդեսիոյ իշխանը Մուսուր, որ ասորի ըլլալով քրիստոնէութեան դարձած էր։

կան ճնշումներուն դէմ, աւելի պակաս պարտք չէ քան պետութեան սահմանները պաշտպանելը (Գելցեր, էջ 217) արգելք դրաւ հողերու ազատ վաճառման։

927ին պատահած մեծ սով մը, պատճառ եղաւ որ կառավարութիւնը առաջին անգամ ուշադրութեան առնէր տնտեսական հարցերը, և զայն մեկնակէտ մը նկատելով այդ թուականէն սկսեալ ջնջըւած հռչակէր բոլոր կալուածական փոխանցումները և գնողները հարկադրէր դարձնել հին սեպականատէրներուն իրենց առած հողերը, մինչև անգամ առանց ստանալու այս հողերը բարուոքելու համար կատարած ծախքերը (Գելցեր, նոյն)։ Այս տնտեսական բարենորոգումը իր նշանակութիւնը ունէր նաև զինուորական տեսակէտով, վասնզի միայն տնտեսական կեանքը չէր որ կը վնասուէր աճող կալուածատիրութենէն այլ նաև զինուորականութիւնը։

Զինուորական ծառայութիւնը հիմնուած էր, ինչպէս հին Հռոմէական կայսրներու ժամանակ, զինուորական կալուածներու վրայ, որոնք անվաճառելի էին։ Երբ անսանձապահութեամբ պարապող մեծամեծներ գնէին այդ հողերը, այն ատեն զինուորահաւաքութիւնը կը դժուարանար (Գելցեր, էջ 218) ինչ որ աղէտ մըն էր պետութեան մը համար որ մշտատեւ պատերազմի մէջ էր գրեթէ։

Ռոմանոսի այս ձեռնարկը — այնքան պատուաբեր իրեն համար — մեծ յաջողութիւն մը չունեցաւ և հարուստ կալուածատէր տարրը իրեն հակառակորդ դարձուց, սակայն խստութեամբ և կորովով ընկճեց բոլոր դաւադրութիւնները որ իրեն դէմ լարուեցան։

Նիկեփոր Փոկաս (963-969), հակառակ անոր որ ինքն Կապադովկացի էր և կը պատկանէր մեծ կալուածատէր ընտանիքի մը և իր իշխանութեան ատեն մեծապէս նպաստաւորած էր իր Կապադովկացի հայրենակիցները, ինքն ալ փորձեց կասեցնել ընդարձակումը մեծ ստացուածքներուն, արգիլելու համար հողին համադրաւումը (Զաքարիա, Գ. էջ 296 եւայլ. Schlumberger «Nicéphore Phocas.» էջ 396)։

Յովհաննէս Զմշկիկ (969-976), որ մեծ իմացականութիւն մըն էր, ինքն ալ մեծ կալուածատիրութեան տարածումին և աւատականութեան դրութեան կիրարկումին դէմ մաքառեցաւ, որպէսզի չջնջուի ազատ գիւղական դասակարգը։

Ան շատ լաւ ըմբռնած էր թէ պետութեան արմատը կը կրծէր որթի պէս կալուածատիրութիւնը, որ վտանգ մը կը դառնար, վասնզի ազդեցիկ ու հարուստ զինուորական ընտանիքները, ինչպէս Փոկասները, Սքլերոսները, Գուրգէնները և այլ, — ամէնքն ալ Կապադովկացի— իշխանական դիրք ձեռք բերած էին, թէ՛ նահանգներու մէջ իրենց ունեցած անսահման կալուածներով և թէ՛ իրենց անձնուէր կուսակիցներու խումբերով։

Այս կերպով հին Հռոմէական զինուորական և պաշտօնակալական պետութիւնը հետզհետէ կը կերպարանափոխուէր և կը դառնար միջնադարեան բարձր ազնուական կազմով պետութիւն մը, թէև Արեւելքի մէջ առաջ չեկաւ երբեք այնպիսի աւատականութիւն մը՝ որ կարող ըլլար կեդրոնական իշխանութիւնը կողոպտել ժառանգութենէ՝ ինչպէս էր Արեւմուտքի մէջ։

Հետեւաբար ինքն ալ հակառակորդ մը հանդիսացաւ կալուածատիրութեան։ Մասնաւորապէս սաստիկ հալածուեցան Փոկասները



որոնց ոխերիմ հակառակորդ էր Վասիլ Ներքինին որ պետութեան քաղաքային վարչութիւնը իր ձեռքը ունէր Զմշկիկի և Վասիլ Բ.ի իշխանութեան ատեն։

Վասիլ Բ. 989էն յետոյ երբ բացարձակ ինքնիշխան գործել սկսաւ ինքն ալ փորձեց տկարացնել Կապադովկեան մեծ կալուածատիրութիւնը։

995ին մայրաքաղաք հրաւիրեց սահմանապահ պարոններէն Կապադովկիացի Մագիստրոս Եւստաթիոս Մալեսինոսը, որ անսահման կալուածներ ունէր և շրջապատուած էր անհամար հետեւորդներով։ Անիկա այլեւս չտեսաւ իր Կապադովկեան դղեակը և իր մահէն յետոյ յարքունիս գրաւուեցաւ իր հարստութիւնը։

Իբր թէ Վասիլ Բ. բառացի և ամենայն ճշդութեամբ հետեւած էր անոր խրատին որով կը յանձնարարէր նահանգներու ազնուականութեան վրայ իշխելու համար հարուստներէն արիւն առնել, որպէսզի անոնք չզօրանան և վտանգաւոր չդառնան։

Նոյնպէս կը պատմուի թէ Վասիլ Բ. հրամայած է կործանել պաշտօններու և աստիճաններու հասած հարուստի մը դղեակը և այն շէնքերը որ ան կառուցեր էր իր հայրենի գիւղին հողերուն վրայ, որոնք ամբողջութեամբ ինքն գնած էր։

Վասիլ այդ յափշտակուած հողերը վերստին գիւղացիներուն բաժնեց։

Երբ Վասիլ Բ. կայսրը ընկճեց բարձր ազնուական ապստամբները, դարձաւ իր մեծ պապին՝ Ռոմանոսի օրէնսդրական ուղղութեանը։

996ին հրատարակեց չափազանց խիստ օրէնք մը։ Գիւղական կալուածներու անվաճառելիութեան մասին Ռոմանոսէն հրատարակուած կարգադրութիւնները միայն թուղթի վրայ մնացած էին։ Այժմ Վասիլ Բ. ամենայն խստութեամբ ջնջուած հրատարակեց մեծամեծներու կալուածատիրական իրաւունքները և հրամայեց որ գրաւուին քառասուն տարիներէ ի վեր մեծամեծներէն բռնագրաւեալ պզտիկ ստացուածքները (Զաքարիա, Գ. էջ 306) և այլն. Schlumberger, Epopée էջ 122 և այլն), և առաջքն առաւ այն նենգութիւններուն, որով մեծ կալուածատէրերը նախ գիւղական կալուածները եկեղեցական կը դարձնէին և այսպէսով իրաւատէր կը դառնային։ Խիստ խօսքերով կայսրը կը յայտնէր որ տէրութեան շահը կը պահանջէր ջնջել հողատիրական հաւաքական մեծ հարստութիւնը և մանաւանդ այսպիսի կալուածները շարունակաբար յաջորդներուն ձգելը։

Այսպէս բռնութեամբ կ'ուզէր հզօր կայսրը դէմ դնել մեծ կալուածատէր և հողատէր դասակարգերուն։

Անոր օրէնսդրութեան գլխաւոր նպատակն էր պաշտպանել միջին և ստորին դասակարգերը։ Նոյնպէս անիկա օգտագործեց 1002ին Alléleugyonի օրէնքը ընդդէմ մեծ կալուածատէրներուն (Զաքարիա Գ. էջ 320 և այլ, և Schlumberger. Epopée. էջ 330, 460)։

Այս կարգադրութեամբ հարուստները պարտաւորուած էին վճարելու իրենց հարկահանութեան շրջանակին մէջ, աղքատներու չվճարած տուրքերը(1)։

(1) Այս օրէնքը որ դէմ էր կալուածատէրներուն 1029ին ջնջուեցաւ Ռոմանոս Գ. Արկիրոպուլոս կայսեր կողմէ, որ այսպէս սիրաշահիլ կը յուսար կալուածատէրները (Հ. Գելցեր, էջ 269)։

«Միայն այս՝ յեռնաչափ մը կը բարձրացնէ այդ կոչիս եւ անկիրք զինւորականը իր ամենաբնածիր աստիճանակիցներէն ասերէն» կ'ըսէ Հ. Գելցեր։

Սակայն իր այս մտադրութիւնը իրագործելու անճրկեցաւ մեծ կայսրը։

Հակառակ այս բոլոր մաքառումներուն ազնուական մեծ կալուածատիրութիւնը անընդհատ կը ծաւալէր և պիտի հասնէր ատեն մը որ կայսրերը խաղալիք պիտի դառնային այդ մեծամեծներու ձեռքը,

Մանաւորապէս Արեւելեան Փոքր Ասիոյ — առաւելապէս անոր հայաբնակ մասերուն մէջ — գրեթէ բոլորովին անհետացաւ գիւղական ազատ դասակարգը։

Կալուածատէր դասակարգին զօրացումին և գիւղական ազատ դասակարգին անհետացման մէջ կարեւոր դեր կատարած է նաև անտանելի ծանրութիւնը հարկերու, զորս Բիւզանդական կայսրերը կը սահմանէին իրենց պալատական պերճանքներուն և մշտական պատերազմներու ծախքերուն հասնելու համար, առանց նկատելու թէ ասով կը քանդէին ժողովուրդին բարօրութիւնը։ Մանաւորապէս շատ ծանր հարուած մը եղած է երկրագործներու համար տուրքը բերքով (պտղի) տալու տեղ դրամով հատուցանելու կարգադրութիւնը որուն պարտաւորուեցան երկրագործները Բիւզանդական անյատակ գանձը լեցնելու համար։

Տնտեսական այս դժնդակ կացութիւնը կ'ստիպէր բնակչութիւնը կամ ապստամբիլ կամ գաղթել։

Հայերը՝ որ Փոքր Ասիոյ բնակչութեան կէսէն աւելին կը ներկայացնէին անշուշտ տնտեսական այս դիմայեղութեանց ենթարկուողներուն առաջին կարգին վրայ կու գային, և հետեւաբար իրենք ալ կրեցին հետեւանքները անոնց և յաճախ դժգոհ տարր մը կազմեցին։

Մանաւորապէս Կապադովկիոյ մէջ, ուր կալուածատիրութիւնը կը ներկայացնէր իրական ոյժ մը, այս դժգոհութիւնը աւելի շեշտուած կերպով երեւան եկաւ և կերպով մը քանդուեցաւ պետութեան ամրութեան սիւնը և անոր սահմանները պաշտպանող ոյժը, վասնզի մեծ սեփականատէրները ունէին ճշմարիտ բանակներ իրենց ձեռքին տակ։

963ին, այն յեղափոխութեան ատեն որ գահը ապահովեց Նիկոփոր Փոկասի, Վասիլ Ներքինին, անհարազատ որդին Ռոմանոս Լէկաբէնի, հայթայթեց բանակին աւելի քան 3000 հոգի իր գերիներէն և ծառաներէն (Schlumberger «Nicéphore Phocas», էջ 295) վասնզի ունէր անսահման տարածութեամբ ստացուածքներ Տաւրոսի մէջ, (Schlumberger, «Epopée», Ա. էջ 309 - 310)։

1001ին Մագիստրոս Եւստաթիոս Մալեսինոս կ'ասպնջականէր իր կապադովկեան կալուածներուն մէջ շատ մը օրեր Վասիլ Բ.ի բոլոր բանակը որ Վրաստանէն կը դառնար (Schlumberger, «Epopée», Բ. էջ 198)։

1057ին, Իսահակ Կոմնէնի յեղափոխութեան ատեն, դաւադիրներուն առաջին ոյժերը եղան իրենց անձնական գունդերը։ Անոնցմէ մէկը, Քաթաքալոն, հաւաքեց այսպէս Կապադովկիոյ մէջ 1000 մարդ իր շուրջը (Կեդրենոս, Բ. էջ 625)։

1067ին Պոտանիատէս, կայսերական բանակը յաղթուած ըլլա-



լով, կրցաւ կասեցնել թուրքերը իր մարդերովը որ ձեռքի տակ ունէր (Ատտալիատէս, էջ 96 և Սկիղիցէս, էջ 663)։

Այս ոյժը խորտակել ուզող տեսութեան մը արդիւնք չէր կրնար ըլլալ։ Հալածանքը որ անոնց դէմ գործադրուեցաւ զանոնք ընկճելու համար, ունեցաւ իր հակազդեցութիւնը, և անոնց մէջ ծնունդ տուաւ անջատողական հակումներու։

Ասով շատ յստակօրէն կը պարզուի մանաւորապէս Կապադովկիոյ Հայ մեծ կալուածատէրներուն կատարած դերը՝ իբր ընդդիմադիր կեդրոնական իշխանութեան և նոյնպէս մեծ աջակցութիւնը որ Վասիլ Բ.ի (976-1025) իշխանութեան շրջանին մանաւորապէս Կապադովկեան կալուածատէրները և անոնց Հայ հետեւորդները, մատուցին իրեն դէմ մաքառող Վարդ Սքլերոսի և Վարդ Փոկասին, երկու հակաթոռ հայածին Կապադովկացի կայսրերուն։

Այս ձգտումը, կասկածելի վայր մը դարձուց այդ թուականէն յետոյ Կապադովկիան, որուն մէջ Հայ կալուածատէրները մեծ տեղ կը գրաւէին իբր հողատէր և իբր աւատական մեծ ազնուապետութեան անդամներ։

Ժողովուրդին և ազնուապետութեան ատելութիւնը՝ որ տնտեսական և քաղաքային պատճառներով այսպէս կը գրգռուէր, ա՛լ աւելի կ'արծարծուէր, կրօնական այն ատելութեամբ որ յոյները կը տածէին մանաւորապէս Զ. դարէն սկսեալ, Հայերու դէմ, Յուստինիանոս կայսրէն ընդգրկուած կրօնական քաղաքականութեան պատճառով։

Ան կը նկրտէր ազգերը և ցեղերը 'ի մի ձուլել օրթոտոքս դարձնելով իր բոլոր հպատակները, որոնց մէջ առանձնայատուկ տեղ կը գրաւէին Հայերը իրենց յամառ աւանդամոլութեամբ խոչընդոտ հանդիսանալով Բիւզանդական պետութեան այս անտեղիտալի ծրագրին դէմ։ Հայերը՝ առ հասարակ աւանդամոլ և պինդ փարած իրենց ազգային սովորութիւններուն ինչպէս նաեւ ազգային Եկեղեցիին, իրենց լեռնականի մտայնութեամբ բռնութեան դէմ ըմբոստ դիրք մը բռնեցին։ Հետեւաբար Բիւզանդիոնի կրօնական քաղաքականութիւնը պատճառ եղաւ որ Հայերը երբեմն յայտնապէս և երբեմն խուլ հակառակութիւն մը տածեն յոյն տարրին դէմ։ Ուստի օրթոտոքս կղերին համար Հայաստան և Հայերը եղան կասկածելի տարր մը, մանաւանդ այն թուականներէն յետոյ, երբ Հայք Քաղքեդոնի ժողովին դէմ որոշ դիրք բռնեցին։

Հայերը ո՛չ միայն բաժնուած էին Եկեղեցւոյ Ընդհանուր Միութենէն, այլ կերտած էին սեփական բարոյական շքեղ կերտուածքով և իր յատուկ դաւաբանութեամբ ազգայնացած Եկեղեցի մը որ Հայ ցեղին ստեղծագործութեանց գեղեցկագոյնը կրնայ համարուիլ և վերջապէս իրենց յատուկ ինքնուրոյն և սեփական մշակոյթը և իրենց դասական կատարելութեամբ լեզուն և գրականութիւնը, որոնք լուրջ խոչընդոտներ էին բիւզանդականութեան մէջ դիւրաւ սուզելու համար Հայաստանէն հետզհետէ Կապադովկիա, ինչպէս նաեւ բոլոր Փոքր Ասիա, Կիլիկիա և այլ Բիւզանդական երկիրներ տեղափոխուած Հայ գաղթականները, որոնք կը տոկային գլխաւորաբար անոր համար որ իրենց մայր-հայրենիքը՝ Հայաստան օրթոտոքսութեան յարած չէր։

Ուստի Բիւզանդական կայսրութեան մէջ կազմակերպուած կրօնական զօրեղ վարչութիւնը, անհանդուրժող իր ոգիովը, ամէն գնով

աշխատեցաւ Հայը և իր Եկեղեցին տկարացնել Հայաստանի մէջ և հալածել իր սահմաններու մէջ գտնուած Հայերը։

Հայերը կը ծառանային ո՛չ միայն օրթոտոքսութեան դէմ այլ նաև իրենց անհանգարտ և որոնող մտքով, նորանոր վարդապետութիւններ կ'ստեղծէին, —նոյնիսկ Բիւզանդական երկիրներու՝ ինչպէս արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ որ այնքան մեծ թիւ մը կը ներկայացնէին— և կ'սպառնային քանդել Յուստինիանոսով ստեղծագործուած և իր յաջորդներէն ընդգրկուած Բիւզանդական՝ կրօնքով և լեզուով միաձոյլ կայսրութեան իտէալը։

Հայերը, Ը. դարուն, սկսած էին կասկածելի դառնալ օրթոտոքսներուն, բոլոր արեւելեան միւս ազգերուն պէս, որոնց մէջ մասնաւորապէս գետին կը գտնէին, մի քանի աղանդներ, առաւելապէս Հայ մտքին ծնունդ։

«Նախապաշարմանց տիրապետութիւնը եւ մշակոյթի քայքայումը՝ պատմական բոլոր ժամանակաց մէջ թերեւս ամենամութ շրջանը կ'ընէին Է. դարը», ինչպէս ըսած է բրոֆ. Պիւրի, Բիւզանդական պատմութեան ամենամեծ հեղինակութիւններէն մին։

Պաւղիկեանութիւնը և Պատկերամարտութիւնը, երկուքն ալ Հայ մտքին արգասիքները, այդ խաւարին մէջ փայլատակող լոյսերը եղան «որոնք Արեւելքը ցնցեցին եւ Արեւմուտքը լուսաւորեցին», ինչպէս շատ վճռականօրէն և յստակ կերպով արտայայտած է Կիպպըն, նոյնպէս Բիւզանդական պատմութեան ամէնէն հեղինակաւոր դէմքերէն մին(1)։

Բրոֆ. Մառ կը հաստատէ թէ «առաջ աղանդաւոր վարդապետութիւններէն որոնք բանձրախիտ կը բուսնէին Հայկական հողին վրայ, ընդհանուր նշանակութիւն ստացաւ Պաւղիկեանութիւնը» (Հայկական մշակոյթը, տես ԼՈՅՍ, 1927, Բ. տարի, Թ. 1) որ մեծ նմանութիւններ ունէր Պատկերամարտութեան հետ։

Հայաստանի մէջ ծագում առած այս աղանդին՝ Պաւղիկեանութեան —արդի Բողոքականութեան նախածնողին— հետեւողներուն Կապադովկիոյ շրջանակին և մասնաւորապէս Արգէոս լերան շուրջը տեղաւորումը, ազդակներէն մին եղաւ այն կրօնական մեծ յուզումին որ Բիւզանդական պետութեան ճակատագրին վրայ ամենախորունկ ազդեցութիւն ունեցաւ։

Այդ մեծ յուզումը Պատկերամարտութեան շարժումն էր որ ծագում առաւ Փոքր Ասիական արմատէն, նոյնիսկ հայկական մտքէն, քանի որ անիկա մէկ անդրադարձութիւնն էր Պաւղիկեան հայածնունդ աղանդին, որ կը զօրանար մահմետական կրօնքին ինչ ինչ վարդապետութիւններով որոնք ցնցող ազդեցութիւն մը կ'ունենային։

«Մասնաւորապէս Մարիամապաշտութեան եւ սրբոց նշխարներու եւ խորհրդանիշներու ընծայուած չափազանց յարգանքին դէմ հակառակութիւնը հասարակաց էր Պաւղիկեաններուն եւ Պատկերամարտներուն: Այս նմանութեան նշանակութիւնը կը յայտնուի երբ յիշենք թէ Կոմմագէնիի մէջ ծնած էր Պաւղիկեա-

(1) Gibbon ունի ութ հատոր History of the Dicline and Fall of the Roman Empire անունով հոյակապ գործ մը։



նութեան հիմնադիրը(1) եւ թէ Պատկերամարտութեան հեղինակն ալ(2), եթէ չէր ծնած Մարաշի մէջ, սերտօրէն կապակցուած էր անոր: Կը թուի թէ Տաւրոսեան լեռանց կորովի լեռնականներուն հոգւոյն մէջ բոյն դրած էր խորշանք մը՝ ընդդէմ խորհրդապաշտութեան եւ անոր զուգակից նախապաշարմանց» (Բրոֆ. Պիւրի, Յետնագոյն Հռոմէական Կայսրութեան Պատմութիւնը, Բ. հտ. էջ 397)։

Բրոֆ. Կոնիպէր կ'ըսէ թէ «Հակառակ իրենց ուղղափառ հալածիչներու չարախօսութեանց՝ մենք գիտենք թէ բարոյական բարձր իտէալով մըն էր որ տոչորուած էր այս Հայ հերետիկոսներուն առօրեայ կեանքն ու ընտանիքը: Բուն մեր Քուէյքըրներուն կը նմանէին անոնք, ու Աւետարանին վրայ կը հիմնէին իրենց կեանքը, առանց խոտակեաց կամ ճգնաւոր ըլլալու: Անոնց բարոյականութիւնը չէր կայանար ծոմապահութեանց կամ տօնախմբութեանց եւ կամ եկեղեցական խորհրդոց ծիսակատարութեանց մէջ» (Աշխարհի Կրօնական Դրութիւնները, էջ 375)։

Այս աղանդները որոնք կրօնական արթնութեան արտայայտութիւններ էին, Հայ մտքին արգասիքներն էին և որոնք ցնցող ազդեցութիւն մը կ'ունենային ամբողջ պետութեան մէկ ծայրէն միւսը։

«Իրողութիւնը այն է որ, կ'ըսէ Բրոֆ. Պիւրի, Է. դարու կէսերէն ի վեր Հռոմէական կայսրութեան մէջ դաստիարակութիւնը պասուած էր խաւարով եւ որ, եթէ չըլլար Պատկերամարտութեան ներմուծած հակազդեցութիւններուն նոր ոգին, հարաւային արեւելեան Եւրոպան եւ Փոքր Ասիան ալ պիտի քալէին տգիտութեան եւ ապականութեան միեւնոյն խաւարին մէջ, ուր Եւրոպա քալեց յաջորդ դարերու ընթացքին...: Արդարեւ Ը. դարուն վախճանին՝ մեծ թիւ մը կը կազմէին դաստիարակեալ եւ ուսեալ մարդիկ. մինչդեռ Ը. դարուն սկիզբը մէկ հատ դաստիարակեալ նշանաւոր մարդ չէր գտնուեր» (տես Յետնագոյն Հռոմէական Կայսրութեան Պատմութիւնը, Բ. հտ. էջ 434–437)։

Եւ նկատելի է թէ, ինչպէս կ'ըսէ Բրոֆ. Պիւրի, «կրնանք ընդհանուր կերպով նշանակել աշխարհագրական սահմանները Պատկերապաշտութեան եւ Պատկերամարտութեան բախումին: Յունաստան ջերմապէս փարած էր պատկերներու, իսկ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԵՒ ՀԱՐԱՒԱՅԻՆ ՓՈՔՐ ԱՍԻԱ ՀԱՅՐԵՆԻՔՆ ԷԻՆ ՀԵՐԵՏԻԿՈՍՆԵՐՈՒՆ»:

Հայերը՝ Փոքր Ասիոյ բնակչութեան կէսէն աւելին, և ծնողները նոյնիսկ այդ աղանդին, իրենց բնածին անհանգարտ մտացիութեամբ անշուշտ մեծ մասամբ կը գտնուէին Պաւղիկեանութեան և Պատկերամարտութեան յարած, և այսպէս վտանգաւոր թշնամիները դարձած Բիւզանդականութեան իտէալին։

Ասոր համար անշուշտ կարելի է խորհիլ թէ Լեւոն Գ. Իսաւրացի կայսեր (714–741) յարումը Պատկերամարտութեան, կրնայ համոզումի

(1) Բրոֆ. Կոնիպէր «Աշխարհի Կրօնական Դրութիւնները» գործին մէջ կ'ըսէ թէ Պաւղիկեան հերետիկոսութիւնը ծագում առած է Մանազիէն Կոստանդին անուն Հայէ մը, որ իբր Է. դարուն մէջտեղերը ծնած էր Սամոսատի մօտ, ոչ շատ հեռի Քաղդէաստանի Ուր քաղաքէն, ուսկից յառաջ եկաւ Աբրահամ, քարոզելու և ապրելու ճշմարիտ Աստուծոյն հաւատքը։ Պաւղիկեան աղանդին հիմնադիրներուն, Պօղոս Սամոսատցիի և Կոստանդինի մասին տեսնել Հ. Բարսեղ Սարգիսեանի «Ուսումնասիրութիւն Մանիքէա-Պաւղիկեան Թոնդրակեցիներու աղանդին եւ Գր. Նարեկացւոյ թուղթը», (էջ 33-38)։

(2) Կ'ակնարկէ Լեւոն Իսաւրացիին։

արգասիքը չըլլալ այլ լոկ քաղաքագիտութեան, թէև իբր ասիացի այս կայսրը համոզումով ալ կրնար միացած ըլլալ կրօնական այս հոսանքին որ ասիական նահանգներու խորը տարածուած էր։

Ասիան էր պետութեան հիմը և խարիսխը, ուստի Լեւոն Իսաւրացի թերեւս զայն շահելու և պետութիւնը փրկելու բարձր գաղափարէն ներշնչուած 724ին հրովարտակով մը դէմ արտայայտուեցաւ Պատկերապաշտութեան, առանց նկատի ունենալու բովանդակ պետութեան մնացեալ մասին աւելի ուժեղ ընդդիմութիւնը։

Շառլ Դիհլ շատ ուղիղ հայեցողութեամբ մը կը հաստատէ թէ «Լեւոն Գ. եւ իր որդին իրենց կողքին պատրաստ գտան օգնելու Պատկերամարտ զօրաւոր ոյժ մը։ Անոնց իրական ոյժը, Ասիական բնակչութեան եւ բանակին մէջն էր, որոնք կազմուած էին Ասիական տարրերէ, ՄԱՍՆԱՒՈՐԱՊԷՍ ՀԱՅԵՐԷ» (Charles Diehl. Cambridge Medieval History, Դ. հատ. էջ 83)։

Եթէ Լեւոն Իսաւրացի, քաղաքագիտական հաշուով ցոյց տուած է այս յարումը, այն ատեն որոշ է թէ Հայերը գերակշիռ դիրք ունէին Փոքր Ասիոյ, ըստ որս նաև Կապադովկիոյ մէջ, որ մեծ աղբիւր մըն էր զինուորներու հաւաքման համար։ Արեւելքն էր որ կու տար զինուորը, ուստի զայն շահիլ անհրաժեշտ էր, զի պետութիւնը գերագոյն պայքար կը մղէր արաբ արշաւին դէմ, որ այդ թուականէն յետոյ տակաւին երեք դար եւս պիտի տեւէր։

Լեւոն Իսաւրացի զինուոր արտադրող տարրերու — մանաւանդ Հայերու—համակրութիւնը շահելու համար այս քայլը առնելով, պետութեան մէջ առաջացուց խոր յուզում մը և կերպով մը առաջ բերաւ Պետութեան և Եկեղեցւոյ անջատում։

Այս պառակտումը խորունկ ազդեցութիւն մը ունեցաւ թէ՛ պետութեան քաղաքականութեան վրայ և թէ՛ փոխեց այն յարաբերութիւնները որոնք Բիւզանդիոնի կայսրերը ունէին Փոքր Ասիոյ կէս-օրթոտոքս ժողովուրդներուն հետ։

Պատկերամարտութիւնը շատ ծաւալ գտաւ պետական Եկեղեցիէն հեռացեալ համայնքներու և Փոքր Ասիոյ արեւելեան սահմաններու մէջ, ուր արդէն Պաւղիկեան և այլ աղանդաւորներ կը բնակէին։

Եւ սկսան նոյնիսկ զինեալ հալածանքներ, Հայերուն և այդ աղանդաւորներուն դէմ, որոնք ընկճելու համար ամէն տեսակ բիրտ միջոցներու դիմեցին։

Կայսրերը այսպէս անհեռատես ընթացքով — որ կղերական կուսակցութեան երկրին քաղաքականութեան միջամտելէն ծնունդ կ'առնէր— պետութեան քայքայումը և տկարացումը փութացուցին վասնզի անոր արեւելեան սահմաններուն բնական պաշտպաններուն — ոչ-քաղքեդոնական ու միադաւան ազգերու— ատելութիւնը հրաւիրեցին իրենց վրայ։

Հազիւ քանի մը իմաստուն կայսրեր գտնուեցան որ կորսուած Արեւելքի ժողովուրդներու համակրանքը շահելու համար ձեռնարկներ ըրին, ներշնչելով յոյսեր կրօնական ազատութեան կամ ստեղծելով դաւաբանական միջին բանաձեւեր որոնք թէ՛ միաբնակները և թէ՛ երկաբնակները միանգամայն գոհացնել կը միտէին։ Ներողամիտ ոգի մը կամ կրօնական վէճերէ խոյս տալու զգուշութիւն մը թերեւս ոգեւորէր Փոքր Ասիան և նպաստէր երկրին վերականգմանը։

Դժբախտաբար կրօնական նորանոր երկպառակութիւններ պետու-



թեան քաղաքականութեան մէջ Օրթոտոքս Եկեղեցւոյ արեւելեան ազգերը ձուլելու տենչանքով վառուած կղերական կուսակցութեան ազդեցութիւնը և գործունէութիւնը ընդլայնեցին։

Եւ ասոր հետեւանքը եղաւ Արեւելքի ամբողջական կորուստը։

Մանաւանդ Ը. դարուն վերջերը երբ Հայ տարրը Բիւզանդական կայսրութեան բովանդակ զօրութիւնը կը ներկայացնէր իբր անոր զինուորական յենարանը և պետութեան վարչութեան ամէնէն կառկառուն դէմքեր տուող ցեղը, իմաստութիւն մը չէր Հայերը հալածանքի ենթարկել, իրենց կրօնական համոզումներուն համար։

Յոյները այդ իմաստութիւնը չունեցան։ Ընդհակառակը հալածեցին Հայերը իբր ոչ-քաղքեդոնական, իբր Պաւղիկեան աղանդաւոր(1) և այլն։

Այս տեսակ դէպքերու յիշատակութեան յաճախ կը հանդիպինք։

Այնպէս որ Հայերը որոնք մանաւանդ կայսրութիւնը պաշտպանելու համար անոր սահմաններուն մէջ հաստատուած էին, զզուած այս հալածանքներէն, երբեմն դաւեցին յունաց դէմ։

Սմբատ Բագրատունի, 705ին կայսրէն կ'ընդունի Կիւրապաղատի տիտղոս, և ճորտական իշխանութիւն մը Կողքիսի մէջ՝ արդի Բօթի քաղաքը նստոց ունենալով։

Սակայն քիչ յետոյ, խոյս կու տայ Բիւզանդական երկիրներէն կողոպտելով քաղաքը, գանձը և եկեղեցիները, և կ'երթայ կը միանայ արաբներուն (Ղեւոնդ պատմիչ, Արշաւանք Արաբաց 'ի Հայս, 1857, էջ 59)։

Նոյնպէս հաւանօրէն Փիլիպիկոսի (711 – 712) հալածանքներուն պատճառով է որ Հայերը Բիւզանդական երկիրներէն հեռացան և հաստատուեցան արաբական երկիրներ, Մելիտինէի շրջակայքը, ուր եղան անկէ յետոյ Հռոմէացւոց կատաղի թշնամիները (Michel le Syrien Բ. էջ 482)։

Տաճատ Անձեւացի, Բիւզանդական կայսրութեան քսան երկու տարի ծառայելէ յետոյ, դաւեց անոր դէմ և անցաւ արաբներուն կողմը (Ղեւոնդ պատմիչ, էջ 192 - 193)։ Խալիֆան անոր տուաւ Հայաստանի հրամանատարութիւնը, թէև նախարարները և աւագանին մերժեցին հնազանդիլ գոյն փոխելու այսքան ընդունակ մարդու մը։

Ասոնք ամէնն ալ կը կատարուէին անշուշտ ոչ առանց պատճառի։

Նոյնպէս յոյները կը գանգատէին շատ կանուխէն Հայ հետեւակ զօրքերէն որոնք հաստատուած էին մեծ թուով Տաւրոսի մէջ, այն պայմանով որ ծառայեն բանակին մէջ և պաշտպանեն կիրճերը և սահմանագլուխը։

---

(1) Մանաւանդ Պաւղիկեաններուն դէմ գործադրուած սաստիկ հալածանքը պատրանքը տուած է յոյներուն թէ զայն արմատախիլ ըրած են, սակայն չեն յաջողած, վասնզի, քիչ յետոյ, Թ. դարուն վերջերը տարբեր դիմայեղութեամբ մը ծագում կ'առնէր նման աղանդ մը Հայաստանի Ծաղկոտն գաւառին մէջ, Սմբատ անուն անձի մը քարոզութեամբ, որ Պաւղիկեան աղանդաւորներու մնացորդները իր շուրջը հաւաքելով, Հարք գաւառի Թոնդրակ գիւղը իրեն կեդրոն կ'ընէր և նոր կերպարանափոխութեամբ և նոր կոչումով (որ է Թոնդրակեցի) նորէն իր գլուխը կը ցցէր գրեթէ նոյն աղանդը և նորէն կ'զբաղեցնէր քրիստոնեայ աշխարհը, մանաւանդ Հայերը։

Ժ. դարուն Նիկեփոր Փոկաս (963 – 969) հաստատելով որ այս Հայերը որոնք իբր զինուորական աւատներ (fief) հաստատուած էին Տաւրոսի կողմը, չէին կատարեր իրենց պարտականութիւնը, անոնց դէմ միջոցներ ձեռք առաւ։ Անիկա պահանջեց այս ըմբոստներէն, բանակին մէջ ծառայելու տեղ՝ դրամ, որով վճարուեցա՛ ուրիշ տեղերէ զինուորագրեալ վարձկանները։ «Պէտք է հաւաքել եւ զունդեր կազմել ընտրեալ մարդերէ որոնք պիտի ստանան գումար մը առնուած բանակէն, քանի որ բանակը չըներ այս գործը» (De Velitatione Belli, գլ. 3, էջ 188, Schlumberger. «Nicéphore Phocas», էջ 177 – 178)։

Ասոր հետեւանքը եղաւ որ Հայերը՝ նկարագրով յարափոփոխ և երկմիտ (Զաքարիա, էջ 290) լքեն տարիներէ 'ի վեր իրենց կազմած աւատները (fief) և իրենց բնակած երկրին պաշտպանութիւնը և երթան Սուրիա՝ արաբական երկիրներ։

Նիկեփոր հրամայեց առանց պայմանաժամ տալու գրաւել իրենց սեփական ինչքերը ինչպէս նաև աւատները (fief) այդ նուէրընկալներու որոնք անհետացած էին երեք տարիէ ի վեր և անոնց տեղը դրաւ աւելի արժանաւորներ (Զաքարիա, Գ. էջ 290-291, Schlumberger, «Nicéphore Phocas», էջ 394)։

Սակայն այս դէպքերը չէին կրնար անհետեւանք մնալ և օրէ օր աւելի կը չեշտէին ատելութիւնը որ Հայոց և Յունաց միջև ծագում առած էր, երեք դարերէ ի վեր առնուազն։

Հայերը՝ որչափ ատեն որ Հայաստանէն խոյս կու տային պարսիկներու և արաբներու հալածանքէն և կ'ապաստանէին քրիստոնեայ Բիւզանդիոնի երկիրները, աւելի համակերպող վիճակ մը ունէին, ո և է յենակէտ ու ապաստանի վայր կամ ույժ չունենալով իրենց պաշտպան ու նեցուկ։

Իսկ ըմբոստ ու անհամակերպող նկարագիր մը կ'ստանային երբ իրենց մէջ ույժ կ'զգային դիմակալելու համար Բիւզանդական ճնշումին։

Ե. դարէն մինչև Թ. դար, Հայոց համար չափազանց ձախող դասաւորուած էին դէպքերը Արեւելքի մէջ, ուր Հայերը չունէին ո և է զօրաւոր յենակէտ կրակապաշտ պարսից և մահմէտական արաբներուն դէմ։

Թ. դարէն սկսեալ Արեւելքի մէջ տեղի կ'ունենար փոփոխութիւն մը որ Հայերու դիրքը կը զօրացնէր քիչ մը։

Հայերը և Վրացիները արաբական գերիշխանութեան տակ կը յաջողէին կէս-անկախ տէրութիւններ հաստատել, և Ժ. դարուն այդ իշխանութիւնները հետզհետէ կ'ամրապնդուէին և գրեթէ բոլորովին անկախ կը դառնային։

Խալիֆան Աշոտ Երկաթի (915-928) շնորհած էր Շահնշահ (արքայից արքայ) տիտղոսը, որ սին տիտղոս մը չէր, վասնզի ասով կը ճանչցուէր, հանդիսաւորապէս և պաշտօնապէս, իր գերիշխանութիւնը Հայաստանի հողին վրայ գոյութիւն ունեցող բազմաթիւ քրիստոնեայ ճորտ իշխանութիւններուն վրայ։

Հայաստան բացարձակ կը ձերբազատուէր արաբ ազդեցութենէն։

Ճիշդ այս օրերուն Ռոմանոս կայսրը (920 – 944) իր յաջողութիւններով նոր հմայք կը տարածէր Արեւելքի մէջ։

Հայերը, սիրով վերստին կը հակէին Բիւզանդիոնի կողմը, որ կրնար այս նպաստաւոր տրամադրութիւնը օգտագործել Արեւելքի



մէջ քրիստոնեայ համագործակցութիւն մը ստեղծելու և Հայաստանով կազմելու քրիստոնեայ աշխարհին համար պաշտպանութեան նախադուռ մը, սակայն Բիւզանդական անմիտ մոլեռանդութեամբ գրգռուած Ռոմանոս այս պատեհութիւնը չկրցաւ ի նպաստ իր պետութեան լաւ ըմբռնուած շահերուն գործածել։

Այս կայսրը Ասիոյ մէջ ունեցած յաջողութիւններէն խրոխտացած սկսաւ կայսրութեան սահմանին մէջ եղող Հայերը ստիպել որ Քաղկեդոնական դաւանանքը ընդունին մանաւորապէս իր խստութիւնը եկեղեցականներու վրայ ծանրացնելով։ Այս պատճառով բազմաթիւ կրօնաւորներ յունական երկիրներէ հալածական կրօնական պատճառներով Բագրատունեաց երկիրները ապաստանեցան (Վարդան պատմիչ, էջ 88, Կիրակոս, տպ. Մոսկուա, 1858, էջ 47 և Ասողիկ, 1859, էջ 159) և Շիրակի և Սիւնիքի և ուրիշ շրջակայ գաւառներու մէջ վանքեր հիմնեցին և արդէն գոյութիւն ունեցողները պայծառացուցին։

Այսպէս Երասխաձորի (Արշարունիք) մէջ կը շինուի Կամրջաձորի վանքը, ուր 300 խարազնազգեաց ճգնաւորներ հաւաքուած էին, Շիրակի մէջ կը շինուի Հոռոմոսի վանքը որ օթարան մը ունէր, Դերջանի մէջ, Խլաձորի վանքը, Ռշտունեաց մէջ՝ Նարեկի վանքը։

Այս պատահարը երեւան կը հանէ իրողութիւն մը։

Յունական երկիրներու մէջ ուրեմն կային այնքան մեծ թուով ոչ-քաղքեդոնական Հայ վանականներ, որոնք Ռոմանոսի հալածանքներու պատճառով նախամեծար կը համարէին դառնալ իրենց բնակավայրը՝ Հայաստան։

Ժ. դարուն, Յունական երկիրներու մէջ, հետեւաբար, գոյութիւն ունէր Հայ զօրաւոր վանական կեանք մը և դաստիարակութիւն մը, անշուշտ տեղացի դարձած Հայերու սերունդներէն առնուած։

Նկատի ունենալով Կապադովկեան աշխարհին վանականութեան ունեցած հակամիտումը, կրնանք խորհիլ թէ այդ հալածական Հայ վանականներու մեծամասնութիւնը Հայ Կապադովկիացիներ էին, որ այսպէս կը մեկնէին երկրէն անշուշտ անոր կրօնական և մշակութային կեանքին մէջ առաջ բերելով անջրպետներ և դատարկութիւններ և ստեղծելով գրգռութիւններ որոնք կը տկարացնէին պետութիւնը։

Յանուն օրթոտոքս դաւանանքին գործադրուած այս հալածանքները, որոնք պետութեան կրօնական քաղաքականութեան առանցքը կը կազմէին և շարունակուեցան յարատեւաբար, պատճառ եղան ո՛չ միայն վանականներու մեծ հատուածի մը Հայաստան ապաստանելուն այլ անշուշտ նաև շատ մը ուրիշ Հայերու, որոնց համար լաւագոյն ապաստանարան մը կրնար ներկայացնել անկախ Հայաստանը որ գոյութիւն ունէր այդ դարուն։ Նոյնիսկ Յովհ. Զմշկիկ (969–176) որ իր Հայ ծագման պատճառով մռայլ մոլեռանդութեամբ մը չէր վերաբերուէր դէպի Հայ համայնքները, ինչպէս խստապահանջ օրթոտոքսները, թելադրութեամբ Անտիոքի Թէոդոր և Կ. Պոլսոյ՝ Պոլիքոս պատրիարքներուն հրամայեց Ասիոյ մէջ Պաւղիկեանները և Մանիքեցիները փնտռել, հաւաքել և փոխադրել Թրակիոյ Փիլիպպոպոլիս քաղաքը, թերեւս թոյլ չտալու համար որ անոնք ալ Հայաստան անցնին, ի վնաս Բիւզանդական պետութեան, որուն կռուող ույժերէն բան մը պակսած պիտի ըլլար այսպէս։ Զմշկիկ հաւանօրէն պէտք է խորհած ըլլայ ու-

ղիղ դատողութեամբ մը թէ այդ քաջ գունդերը մեծապէս աւելի օգտակար կրնային ըլլալ Պալքաննեան թերակղզիին պաշտպանութեան համար, քան Ասիոյ մէջ, ուրտեղ Արաբները՝ բաժան բաժան եղած իրարու դէմ կը պատերազմէին՝ Խալիֆաներու քայքայուած պետութեան մնացորդներուն վրայ և ուր տեղէն այլեւս վտանգ չի կար (Հ. Գելցեր, էջ 234-5)։

Պաւղիկեան հերետիկոսութիւնը ջախջախուած Հայաստանի մէջ՝ ամուր արմատ բռնեց պուլկարներու մէջ, որոնք այդ միջոցին Քրիստոնէութիւնը ընդունելու վրայ էին։

Այդ աղանդը զօրեղ ազդեցութիւն ունեցաւ Նորադարձ Սլաւներու վրայ, իր մաքուր և խոր զգայուած քրիստոնէութեամբ, և յետոյ Եւրոպան հրդեհեց, վերանորոգութեան շարժմամբ։

Զմշկիկ, այս մեծ արդիւնքներուն անգիտակից պատճառը, երբեք չէր կրնար նախատեսել այն մեծ ու անհաշուելի հետեւանքները որոնք առաջ պիտի գային Պաւղիկեանց դէպի Պալքանները տարագրութեամբ։

Զմշկիկ պետութեան ամրապնդումի տեսակէտով միայն շարժած էր և ձուլումի մը հեռապատկերը թերեւս ունէր իր աչքին առջև, մինչ համաշխարհային նշանակութիւն ունեցող շարժման մը պատճառ եղաւ և Հայկական միտքին ծնունդը եղող այս աղանդը պատուաստեց Եւրոպայի, ուր յետոյ այնքան մեծ հետեւանքներ պիտի ունենար։

Այս տեղափոխուած Պաւղիկեանները և Մանիքեցիները, ամէն տարակոյսէ դուրս է թէ ժողովուած էին Կապադովկիոյ շրջանակէն և առաւելապէս Հայերէ կը բաղկանային։

Տարագրութիւնը որ ասոնց դէմ կը գործադրուէր անշուշտ կ՚արծարծէր ատելութիւնը որ արդէն գոյութիւն ունէր Հայ և Յոյն ազգերու միջև որոնք իբր բնակակից կ՚ապրէին Անատոլուի մէջ, և սերտ գործակցութեամբ միացած՝ միայն կրնային դիմակալել սպառնացող վտանգին։

Ինչպէս արդէն բացատրուեցաւ, Հայաստան անջատուած արաբ գերիշխանութենէն ահագին պատնէշ մըն էր Բիւզանդիոնի համար, զոր ոչ մէկ գինով պէտք չէր օտարացնել։

Երեք Հայ կայսերու Նիկոփոր Փոկասի (963–969), Յովհաննէս Զմըշկիկի (969–976) և Վասիլ Պուլկարասպանի (976–1025) շրջանը, իր արտաքին փայլով անգերազանցելի, սակայն ներքին ամրութենէ զուրկ էր, վասնզի շնորհիւ օրթոտոքս կղերին ներքին միութիւն մը գոյութիւն չունէր և հակառակ կայսրերու Հայ ծագումին Հայու և Յոյնի պայքարը կը շարունակուէր, և հակառակ այն մեծ շահերուն որ անկախ Հայաստանի մը պահպանութիւնը — իբր պատուար — կրնար ընծայել Բիւզանդական կայսրութեան, յոյները չէին հանդուրժեր Հայաստանի գոյութեան։ Միայն Յովհաննէս Զմշկիկ, արդարև իր դարուն մեծ մարդը, կրցաւ ըմբռնել Հայաստանի կարեւորութիւնը և Աշոտ Ողորմած Հայոց թագաւորին հետ միշտ բարեկամ մնաց։

Սխալ է հաւանօրէն մեր պատմագիրներու աւանդածը թէ Աշոտ Ողորմած թշնամական նկատած է Զմշկիկի գալուստը Տարոն բանակով մը (972ին) «վասնզի ինչպէս իրաւամբ դիտել կու տայ Դուրեան պատրիարք, կայսրը պատճառ մը չունէր Հայոց իշխանութիւնը հար-



ուածելու, թողունք որ ինք իբրև Հայազգի մը՝ այդ անպատեհ թըշնամութիւնը գրգռելու հակամէտ ոգի մը չէր կրեր, և նոյնիսկ իր նամակին մէջ, զոր ըստ Ուռհայեցւոյն գրեց առ Աշոտ Ողորմած՝ կոչելով զայն «իմ հոգեկան զաւակ» ինչպէս սովորութիւն էր Բիւզանդեան կայսերաց յորջորջել Հայ իշխանները, կ՚աւելցնէ «հաւատարիմ սիրելի թագաւորութեան մերում» և այլ համակրական բացատրութիւններ» (Ազգ. Պատմ. էջ 354)։ Իսկ գերազանց փաստը թէ անոնք իրարու բարեկամ և զինակից էին այն է որ Զմշկիկ իր արաբներու դէմ ընելիք նոր արշաւանքին համար իբր 10.000 զօրքերու օգնութիւն խնդրած է Հայոց թագաւորէն, ինչպէս նաեւ պաշար ռոճիկ, և Աշոտ իբրեւ հարկատու իշխանութիւն չէ թերացած կատարել ամէն ինչ ըստ առաջարկութեան կայսեր։

Վասիլ Բ. (976–1025) և իր եղբայրը Կոստանդին, ո՛չ միայն այդ պատուարը քանդեցին, կարճմտութեամբ ձեռք դնելով Հայկական տէրութեան և Եկեղեցիին վրայ, այլ այսպէս գրգռեցին նաև թէ՛ Հայաստանի և թէ՛ Բիւզանդական Անատոլուի մէջ բնակող Հայոց ատելութիւնը ընդդէմ Յունաց։

Հակաքաղքեդոնականութիւնը Հայաստանի մէջ դեռ իրական ոյժ մըն էր որ պէտք էր հաշուի առնէր Հայաստանի տիրապետել ուզող ոեւէ տէրութիւն, վասնզի կարելի չէր տեւականացնել Բիւզանդական տիրապետութիւնը երբ բնիկ ժողովուրդին ատելութիւնը ամէն օր կ՚արծարծուէր(1)։

Վասիլի նման աննկուն զինուորական մը կարող էր երկաթէ մըտրակով մը լռեցնել վիճաւէր և միարարութեան ձգտող կղերականութիւնը և այսպէս առաջ տանիլ յաջողութեամբ Բիւզանդական պետութեան ամրապնդումը և բարւոքել իրերու դրութիւնը, նախապէս ստացուած փորձառութեան մը վրայ հիմնուած, քանի որ Եգիպտոսի և Ասորիքի միաբնակ քրիստոնեաները նպաստած էին այդ երկիրներու արաբ տիրապետութեան ենթարկուելուն և Հայաստանի մէջ յաճախ անոնց յաջողութեան սատարած։

Վասիլ Բ. չկցաւ պետութեան գերագոյն շահերուն հեռատես ըմբռնողութեամբ թօթափել օրթոտոքս կղերին ազդեցութիւնը և հալածեց միաբնակ Հայերը։

Իր օրով արեւելեան վիճակներու Յոյն մետրոպոլիտները սկսան այդ շրջանակներուն մէջ ապրող և բնակչութեան մեծամասնութիւն կազմող Հայերը խստագոյն հալածանքներու առարկայ ընել, զանոնք քաղքեդոնականութեան հնազանդեցնելու համար։

Հայ պատմագիր մը, Ստեփանոս Ասողիկ, կը յիշատակէ այն մեծ հալածանքը որ գործադրեցին Սեբաստիոյ և Մելետինէի, այսինքն Առաջին և Երկրորդ Հայոց մետրոպոլիտները։

Սեբաստիոյ մետրոպոլիտը մինչև իսկ մարմնական տանջանքներ ի գործ դնել տուաւ և նահատակեց զոր օրինակ Սեբաստիոյ Գաբրիէլ

(1) Ասոր գլխաւոր փաստն էր Հայոց գործադրած հալածանքները անոնց դէմ որոնք միութիւն կը փորձէին։ Այսպէս գահընկէց եղաւ Վահան կաթողիկոս 969ին և օտար մը նկատուեցաւ Փիլարգոս, որ օրթոտոքս կրօնքին յարած էր։

աւագերէցը (986)։ Անիկա արգիլեց նաեւ Հայոց եկեղեցիին կոչնակը։

Որքան որ Հայերէն շատերը արիաբար դիմադրեցին, սակայն տկարացողներ ալ եղան, ինչպէս Սեբաստիոյ՝ Սիոն և Լառիսայի՝ Յովհաննէս եպիսկոպոսները և կարգ մը քահանաներ (Ասողիկ, տպ. 1859, էջ 188–189)։

Նոյնիսկ 1007ին ծաղզատիկին առթիւ Երուսաղէմի մէջ ո՛չ միայն 10,000 քրիստոնեաներ կոտորուեցան (Սամուէլ Անեցի, էջ 104 և Մատթէոս Ուռհայեցի, էջ 53) այլ նոյնիսկ Կ. Պոլսոյ և բովանդակ Բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց և Յունաց մէջ վէճեր և կռիւներ տեղի ունեցան։

Վասիլ Բ. իր հալածանքի քաղաքականութիւնը այնքան առաջ տարաւ որ նպատակակէտ ընտրեց, Հայաստանի տիրապետութիւնը և Հայերէն դատարկացումը, Հայոց տեղ հոն տեղաւորելով Պուլկարներ և այլ Պալքանեան ժողովուրդներ։

Այս նպատակով անիկա շարունակ աշխատեցաւ Հայերը տեղափոխել Բիւզանդական երկիրներ մասնաւորապէս Պալքանները, ուր կը յուսար զանոնք օրթոտոքսութեան մէջ ձուլել ժամանակով։

Սակայն ասով աւելի արծարծեց Հայ–Յոյն ատելութիւնը և աւելի նպաստեց Հայոց ինքնորոշման։

Հայ և Յոյն ատելութիւնը գլխաւոր պատճառներէն մէկը հանդիսացաւ հանդէպ Բիւզանդական պետութեան Հայոց ապաշնորհ ընթացքին, ինչ որ աւելի արծարծեց ատելութիւն։

Իրողութիւն է թէ Հայերը շատ լաւ անուն մը չունէին կայսրութեան մէջ։

Անոնք խուսափելու համար Յունաց վարչական ձեւապաշտութենէն կամ կրօնական մարդորսութենէն, ինքզինքնին կու տային ազատ, յարափոփոխ և թափառիկ կեանքի, և ուր որ իրենց սուրով կրնային լաւ ապրիլ, անդադար պայքար կը մղէին, աւազակութիւն երբ չընէին, քաղաքային պատերազմներու կը մասնակցէին։ Ահա թէ ինչ էր իրենց նախասիրած զբաղումը (տես Laurent, «Byz. et les Turcs», էջ 52)։

Կայսրութեան Հայ ճորտերը դիւրաւ մարդասպանութեան տուած էին ինքզինքնին (Նոյն, էջ 52)։

Ամբողջ ընտանիքին անդամները կ'երթային միասին այս արշաւանքներուն և երբ կը բռնուէին և կը պատժուէին, պէտք կ'ըլլար իրենց ճորտական հողը յանձնել ուրիշներու, որովհետեւ յանձապարտ պետին բոլոր ժառանգորդները անոր պէս պատժուած ըլլալով, օրէնքով չէին կրնար զայն ստանալ (Զաքարիա, Գ. էջ 291)։

Մինչեւ իսկ Բիւզանդական աստիճանաւորներու մէջ Հայերը երեւան կու գան իբր անպատկառ աւազակներ։ Իրենց ամենէն հռչակաւոր զօրավարները չէին խնայեր ո՛չ իրենց հայրենակիցներուն և ո՛չ ալ եկեղեցիներուն։

Յովհաննէս Գուրգուաս, Բիւզանդացւոց ծառայող Հայ մը, Ռոմանոս Լեկապէնոսի ատեն աւարի տուաւ, իրապէս, բոլորովին Հայ երկիր մը՝ Բասենը, Կարնոյ արեւմուքը, այն պատրուակով որ անիկա Սարակինոսներու տիրապետութեան տակ էր (Կոստանդին Ծիրանածին, Վարչութիւն Կայսրութեան, էջ 198)։

Նոյն Յովհաննէս Գուրգուասը, ըստ Լեւոն Սարկաւագի (Թ. գլ. 5,



էջ 148) Ռուսներու դէմ պատերազմի մը մէջ, յափշտակած էր եկեղեցիներէն թանկագին անօթներ և առարկաներ (Schlumberger, «Ep.» Ա. էջ 134)։

962ին Նիկեփոր Փոկասի անձնապահ բանակին Հայ զինուորները յարձակեցան կիներու կարաւանի մը վրայ որ դուրս կ'ելլէր Կիլիկիոյ մէջ անձնատուր եղած քաղաքէ մը (Ապուլֆարաճ, Սուրիական Քրոնիկ, էջ 199)։ 963ին, երբ իրենց զօրավարը կ'աւերէր Հալէպի շուրջը, անոնք կ'ուզեն գործել իրենց հաշւոյն Եդեսիոյ մէջ, որուն բնակիչները քրիստոնեայ էին և անոնք կը դառնան 1000 ոչխարներով, 500 ցուլերով և 10 արաբ գերիներով (Ապուլֆարաճ, Նոյն, էջ 200)։

Նիկեփոր Փոկասի բոլոր արշաւանքներուն մէջ, կայսրութեան մէջ՝ Սեբաստիոյ շուրջը (և անշուշտ նաեւ Կապադովկիոյ այլ մասերը) հաստատուած և բիւզանդական բանակներուն մէջ ծառայող Հայերը, ուշադրութիւն կը գրաւէին իրենց աւարառութեանց յաջողութեամբ և առատութեամբ (Նոյն, էջ 200–201)։

Նիկեփոր Փոկաս օր մը (965) օրինակելի դաս մը տուաւ Հայոց որոնք կը յարձակէին գրաւուած քաղաքներէն մեկնող կարաւաններուն վրայ։ Զարկաւ զանոնք, կտրեց անոնց ձեռքերը և քիթերը (Նոյն, էջ 202 և Schlumberger, Nicéphore Phocas, էջ 498)։

Վասիլ Բ.ի դէմ Բարթաս (= Վարդ) Սքլերոսի և Բարթաս Փոկասի յարուցած յաջորդական քաղաքային պատերազմներէն յետոյ, Յովհաննէս Գերականագէտ, Հայ-Վրացիներու մասին, որոնք մասնակցած էին երկու բանակներու պայքարին աւելի համակիր վերաբերումով մը դէպի ապստամբ թագին թեկնածուները, գրեց «Իբերացիներու աւազակութեանց վրայ» տողեր ուր կ'ողբար անոնց հասուցած չարիքը, ըսելով թէ «ինչո՞ւ համար զանգատիլ Սկիւթացիներէն, երբ մենք կը տեսնենք որ մեր հին բարեկամները եւ դաշնակիցները այսպէս կը վարուին» (Ed. Cramer, «Anecdova» Դ. էջ 282. Schlumberger, Epopée Բ. էջ 34 և Laurent, Byz. et les Turces, էջ 52)։

Հայ գունդերու անձնուիրութիւնը դէպի Ալեքս ու Իսահակ Կոմնէնները և դէպի Նիկեփոր Պոտանիատէս, անոնց յեղափոխութիւններուն յաջողութեան նպաստած է, և քաջալերած է շատ մը ուրիշ զօրավարներու յաւակնութիւնները և բազմապատկած գահը զէնքով գրաւելու ձգտումները։

Հայերը յաճախ մղուեցան նպաստելու յեղափոխութեանց, զորս կը սիրէին, և անոնք կը կազմէին անշուշտ մեծ մասը այն մարդոց որոնք «յուսահատ, պատրաստ ամէն բանի՝ փառքի, աստիճաններու եւ հարստութեան տիրանալու համար» կը հաւաքուէին Կապադովկեան Կեսարիոյ մէջ շուրջը Վարդ Փոկասի որ ապստամբած էր 971ին ընդդէմ Յովհաննէս Զմշկիկի (Լեւոն Սարկաւագ, էջ 113. Schlumberger, Epopée Ա. էջ 62)։

Կայսրութեան ճորտ Հայերը, նոյնպէս զանգուածային կերպով ոտք ելլան Վարդ Սքլերոսի ի նպաստ, Մելիտինէէն մինչեւ Վանայ լիճը և Վրաստան, երբ այս զօրավարը անոնց առաջարկեց 976ին քալել Կ. Պոլսոյ կառավարութեան դէմ, և իրեն կողմը շահեցաւ Տարօնի, Մոքսի և Վրաստանի իշխանները։ Մասնաւորապէս նշանակելի է որ Դաւիթ Կիւրապաղատ, Տայքի իշխանը, Վարդ Սքլերոսի դէմ իր օգնութիւնը ի սպաս դնելու համար, 978ին կայսրութեան ձգելէ յետոյ ամբողջ նահանգներ, —մեծ մասը Կարնոյ, Օլթիի և Վանայ լիճի միջև

տարածուած երկիրներուն (Schlumberger, Epo. Ա. էջ 415 և այլն) — անոր դէմ գարձաւ Վարդ Փոկասի միանալով (987–988ին) հակառակ անոր որ իրեն հետ շատ լաւ վարուած էր Վասիլ Բ. (Schlumberger. Նոյն, էջ 692. 747)։

Նոյնպէս Վասիլ Բ.ի՝ Պուլկարներուն դէմ կայսրութիւնը պաշտպանելու համար Մակեդոնիա փոխադրած Հայերը՝ թշնամիին կողմը անցան (Ասողիկ, էջ 236-237. Schlumberger. Epo. Բ. էջ 55)։

Հայերու այս վատ արարքները թուած ատեն, պէտք չէ մոռնալ, ինչպէս իրաւամբ դիտել տուած է Լօրան (տես Byzance et les Turcs Seldjoucides, էջ 51), թէ յոյները գրգռած են այս բոլոր դաւաճանական արարքները և մատնութիւնները, հալածելով իրենց Հայ ճորտերը, զանոնք հնազանդեցնելու համար Կ. Պոլսոյ պատրիարքներուն։

Այս անհանդարտ ու յեղյեղուկ վիճակը որ Հայերը ցոյց կու տան առանց պատճառի չէր։

Մասնաւորապէս կրօնական հալածանքները և տնտեսական դժընդակ պայմանները, տուրքերու անօրինակ ծանրութիւնը, գլխաւոր պատճառներն էին Հայոց դժգոհութեան որ չափազանց չեշտուեցաւ ԺԱ. դարուն, երբ Բիւզանդական կղերին թելադրութեամբ նոր թափ առաւ կրօնական հալածանքը։

Արդ, ԺԱ. դարը նշանաւոր հանդիսացած է Հայերուն դէմ ի գործ դրուած հալածանքներով, ինչպէս նշանաւոր եղած էր Թ. դարը Պաւղիկեաններու և ԺԲ.ը՝ Պոկոմիլներու դէմ գործադրուած հալածանքներով, (Շառլ Տիհլ. Բիւզանդական Կայսրութեան Կառավարութիւնը եւ Վարչութիւնը Cambridge Medieval History, Դ. հտ. գլ. ԻԳ. էջ 737)։

Շառլ Տիհլ. որ հաւատածաւալական աշխատանքը մէկէ աւելի անգամներ հալածանքի երեւոյթ առած կը կարծէ տեսնել (Նոյն, էջ 737) մեզի թոյլ կու տայ խորհելու թէ Հայոց դէմ յարուցած հալածանքը ուրիշ բան մը չէ եթէ Քաղքեդոնականութեան հպատակեցնել բոլոր ոչ-քաղքեդոնիկ տարրերը կամ օրթոտոքս հաւատքին մէջ ընկլուզել միաբնակութիւնը։ Ասով շատ դիւրին կրնայ մեկնուիլ Ասորիներուն ալ Հայոց հետ հաւասարապէս հալածանքի առարկայ ըլլալը։

Այս հալածանքներուն գլխաւոր հանդիսավայրը Ժ.–ԺԱ. դարերուն Սեբաստիան և Լարիսան ըլլալը ինքնին ցոյց կու տայ թէ որքան մեծ ոյժ կը ներկայացնէին Հայերը Կապադովկիոյ մէջ և որքան ամուր փարած էին իրենց կրօնքին, և ինչպէս կը մաքառէին անոր պահպանութեան համար, և թերեւս ատոր համար կը հրաւիրէին իրենց վրայ յունաց ատելութիւնը։

Հետեւաբար ազգերու մրցութիւնը, մանաւանդ Հայ և Յոյն անխուլ պայքարը, որ Բիւզանդական պատմութեան մէջ իր տեղը ունեցած էր (Հմմտ. Բրոֆ. Ադոնց, Հայրենիք ամսաթերթ, Ը. տարի, թ. 5, էջ 78), Կապադովկիոյ մէջ իր տեղը ունէր։

Տեսանք արդէն թէ (տես վերը, էջ 336) տակաւին Թ. դարուն (դէպի 800 ական թուականներուն) Բիւզանդացի գրող մը որքան խոր ատելութեամբ կ'արտայայտուէր Կապադովկիոյ Հայերուն նկատմամբ։

Ուրիշ մը, Կասիա անուն միանձնուհի մը, որ ապրած պէտք է ըլլայ Թ. դարուն կէսերը, Հայոց մասին խօսելով սապէս արտայայտուած է. Հայոց զարհուրելի ազգը պատիր է եւ չարաբարոյ վերին աստիճանի այլ եւ խելացնոր, փոփոխամիտ եւ նախանձոտ, խիստ ոխերուած եւ լի նենգութեամբ,



շատ տեղին է ըսեր անոնց համար իմաստասէր մը թէ «Հայերը չար են, որքան ատեն որ հռչակ չունին. աւելի չար կը դառնան երբ մեծութեան կը հասնին, հարստանալով՝ հիմնովին չար, իսկ երբ նաեւ մեծ հարստութիւն եւ պատիւներ ձեռք կը բերեն չարերէն ամենաչար կը հանդիսանան» (Ն. Ադոնց, ՀԱ. 1901, էջ 130)։

Ամէն տարակոյսէ դուրս և ապացուցուած իրողութիւն մըն է թէ Յոյները կ'ատէին Հայերը, ինչպէս միւս մանր ազգութիւնները, սակայն նոյնքան ճշմարիտ է որ այդ փոքր ազգերն ալ մասնաւոր համակրութիւն մը չունէին Յունաց նկատմամբ։

Ն. Ադոնց (ՀԱ. 1901, էջ 130) կ'ըսէ թէ մինչեւ հիմա Արեւելքի մէջ «Բիրզէն» բառը, որով յոյները կ'որակուին Փոքր Ասիոյ մէջ, վիրաւորական իմաստ ունի, համազօր ըլլալով «ջհուտ» բառին եթէ ոչ աւելի ուժեղ։

Հայերը մասնաւորապէս զանոնք կը կոչէին դրժան ապաւաղեալը դրուժան բառին։

Սակայն ինչպէս Կասիայի արտայայտութիւնները պերճախօսօրէն ցոյց կու տան, Յունաց ատելութիւնը դէպի Հայերը մասնաւորապէս պակաս չէր։

Առհասարակ Յոյները ինչպէս ըսի, կ'ատէին բոլոր մանր ազգութիւնները, որոնք իրենց տիրապետութեան տակ կ'իյնային, որոնց կարգին նաեւ Կապադովկիացիները որոնց մասին յոյն ժողովրդուսոյցը ունի հետեւեալ արտայայտութիւնը որ չափազանց կը յիշեցնէ Կասիայի Հայոց մասին ըսածները։

Ահա ժողովրդուսոյցին բառերը.

«Կապադովկիացիք միշտ չար են, փառքի հասնելնուն աւելի չար, հարստութեան համար ամէնէն չար իսկ եթէ երկու կամ երեք անգամ աւելի մեծ աստիճաններու կ'արժանանան [այն ժամանակ, անշուշտ, ընդմիշտ] չարերէն ամենաչար: Ո՜, կ'աղերսեմ, թագաւոր — ո՛չ չորս անգամ — ապա թէ ոչ ինքն աշխարհը կը փճանայ կապադովկիանալով (կապադովկիական մոլութեանց ենթարկուելով):

Այս ծաղրագիրը յիշած է Յովհաննէս Լիւդաս, Յուստինիանոսի նշանաւոր գործակիցներէն մէկուն վատաբախտ Յովհաննէս Կապադովկիացիի վրայ խօսած ատեն, առանց հեղինակին անունը յիշելու (Joann. Lydas, De Magistratibus, Ed. Bonn. էջ 250)։

Այդ տողերը ծանօթ են նաև Կոստանդին Ծիրանածինի (de Tematibus. ed. Bonn. III. էջ 21)։

Կապադովկիացիները ընդհանրապէս շատ տխուր համբաւ շահած էին յունաց մէջ։

Նոյն ժողովրդուսոյց իմաստասէրին կը պատկանի նաև ուրիշ ծաղրագիր մը, նոյնպէս կապադովկիացիներու վրայ. «Անգամ մը վատ օձ մը խայթեց կապադովկիացի մը, բայց ինքը՝ օձը սատկեցաւ ճաշակելով թունալից արիւն» (Anthol. Pol. II. 325)։

Յայտնի է նմանապէս բիւզանդական սա առածը «երեք կապպան են ամենավատթար— Կապադովկիան, Կրետէն եւ Կիլիկիան» (Նոյն)։

Կասիա, ինչպէս կը թուի, անանուն իմաստասէրի մը բերանը դնելով, ինչ ինչ փոփոխութիւններով, Հայոց կը վերագրէ ինչ որ յոյն ժողովրդուսոյցը ըսած է կապադովկիացիներուն համար, ինչպէս իրաւամբ կը մտածէ Ն. Ադոնց (ՀԱ. 1901, էջ 131), հարց տալով միեւ-

Նոյն ատեն թէ «պէտք է ենթադրել այստեղ մի չարամտութիւն բարեպաշտ կոյսի կողմից» և անմիջապէս կը յարէ թէ «աւելի հաւանական է կարծել, որ Կասիայի ժամանակ կապադովկացի ասելով, հասկանում էին Հայերին գլխաւորապէս»:

Եւ կը շարունակէ ըսելով որ «Արիարաթեանների երկիրը, իբրեւ ազգագրական գաղափար, վաղուց չքացել էր իրականութիւնից: Կապադովկիա աւելի աշխարհագրական անուն էր, որ մեծ մասամբ գրաւել էին Հայերն իրենց յառաջախաղացութեամբը դէպ Արեւմուտք, մանաւանդ Արշակունեանց անկումից յետոյ: Եթէ ճիշդ է, որ հին ժամանակ Հայաստանի արեւմտեան սահմանները Կապադովկիայի ազդեցութեան տակ էին, անուրանալի է նաեւ, որ վերջերը, Յուստինիանոսի ժամանակից եւ նորանից յառաջ, Կապադովկիայի մի մասը նոյնիսկ պաշտօնապէս Երրորդ Հայքի մէջ էր մտնում իւր ժամանակ, այսինքն Թ. դարում: Կասիան ի նկատի ունենալով Հայոց զօրութիւնը այս երկրներում, կարող էր թիւրիմացութեամբ կարծել, որ ժողովրդուսոյց փիլիսոփան եւս Կապադովկացի ասելով Հայ է հասկանում(1):

Այսպէս եղել է, ինչպէս մենք ենք ըմբռնում. թէ հէնց չար դիտաւորութեամբ միանձնուհին կամեցել է փաթթել Հայոց վզին այն ինչ որ ուրիշի հասցէին է ասած — սորանով — հարկաւ չի թեթեւանում անոր ծանր կարծիքը Հայոց մասին: Այս կարծիքը Կասիայի անհատական հայեացքը չէ, որն եթէ հաւատանք, որ 21 տարեկանից վանք է մտել, թերեւս ոչ մի Հայի չի տեսել օժտուած այդ մոլութիւններով: Այս մի ընդհանուր հայեացք է, որ ունէին բիւզանդական յոյները Հայոց վերաբերմամբ, ներշնչուած այն չարախնդրութեամբ եւ նախանձով, որով նոքա նայում էին Հայերի փայլուն յաջողութեան հասարակական եւ քաղաքական կեանքի ամէն ասպարէզներում: Սրամիտ ծաղրագիրը իւր նշանակութիւնը չէր ունենայ, եթէ նկատուի միմիայն իբրեւ պտուղ այն տափակ եւ անոյժ ատելութեան, որ սովորական երեւոյթ է միմեանց կից բնակութիւն ունեցող ազգութիւնների մէջ, եւ որն հետաքրքրութիւն կարող է ունենալ ո՛չ պատմական, այլ աւելի ախտաբանական (Pathologisches Interesse) տեսակէտից, ինչպէս ասում է Հ. Գելցերը, որն այդ կերպ էլ նայում ծաղրագրի վերայ» (տես Berliner Philol. Wochenschrift, 1899, էջ 331)։

Նոյնպէս մեծ արժէք մը չի ներկայացներ Կրումպախէրի (K. Krümbacher, «Kasia», Sitzungsberichte. d. b. k. Akademie d. Wiss. 1897) այն տեսութիւնը որ Կասիան արդարացնելու համար կասկածի տակ կը ձգէ Հայոց բարուց մաքրութիւնը կշիռ տալով «գիտակ» ուղեւորի մը վկայութեան վրայ։

Եթէ գոյութիւն չունենայ իսկ այս տեսակ վկայութիւն մը, իրականութիւն մըն է սակայն որ կապադովկացիք չունէին գեղեցիկ համբաւ մը, ինչպէս յաճախ յիշուեցաւ։

---

(1) Այս իրողութիւնը կը հաստատէ նաև J. Laurent։ Ռոմանոսի 'ի Մանազկերտ պարտութեան առթիւ Աթթալիատէս (էջ 161) և Սկիլիցէս (էջ 698) կ'ըսեն թէ «կապադովկացիք փախան»։ J. Laurent կ'ըսէ թէ ասոնք Հայեր են, կապադովկացի կոչուած, ըստ բիւզանդական սովորութեան Հայ բառէն խուսափելու համար (տես Byzance et Les Turcs seldjoucides dans l'Asie Occidentale jusqu'en 1081, Nancy. 1914 (1919), էջ 76. հմմտ. նաև A. F. Gfrörer, «Byzantinische Geschichten». Graz. 1872, t. III. p. 784)։



ԺԱ. դարուն տակաւին Psellos(1) կապադովկացիները(2) կ'որակէ «անզուսպ» ածականով (Bibliotheca graeca, հատ. Դ. էջ 355), որ նոյնպէս շատ նպաստաւոր կարծիք մը չի տար իրենց վրայ։

Սակայն մեզի համար մասնաւոր շահեկանութիւն ունեցող հարցը այն չէ թէ Յոյները ինչ կարծիք ունէին Հայոց մասին, և Կասիա միանձնուհին և իր նմանները որքան իրաւունք ունէին այդ տողերը գրելու կիրքերու յուզուած այդ ժամանակամիջոցին մէջ, ուր այս երկու ժողովուրդները այնքան խորապէս կ'ատէին իրար, այլ այն է թէ տակաւին Թ. դարուն սկիզբը հեղինակ մը կը խոստովանէր թէ Հայերը իբր չփացած տղաքները կայսրութեան՝ գրաւած էին Կապադովկիան և նոյնիսկ իրենց անունը հարկադրած՝ բոլոր նահանգին, և նոյն դարուն ապրող ուրիշ մը՝ միանձնուհի Կասիա, Հայը և Կապադովկացին մէկ գիծի վրայ կը դնէր, ժամանակի մը մէջ ուր Կապադովկացին իբր ինքնուրոյն ազգ շատ բան կորսնցնել սկսած էր իր առանձնայատկութիւններէն և Կապադովկիան լեցուն էր Հայերով կամ հայացած էր։

Կասիա, ինչպէս տեսնուեցաւ կը նոյնացնէ Հայը և Կապադովկացին, և ինչ որ մէկուն համար ըսուած է, առանց վարանման միւսին համար ըսելուն մէջ ոեւէ անպատեհութիւն չի տեսներ։

Միայն ասիկա բաւական է ցոյց տալու համար թէ Կապադովկիոյ Հայերը ինչ դիրք, ինչ թիւ և ինչ ոյժ կը ներկայացնէին Բիւզանդական տիրապետութեան շրջանին։

## Դ.

## ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻ ՀԱՅԵՐ
## ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԱՍՊԱՐԷԶԻ ՄԷՋ

Բիւզանդական պատմութեան էջերը երբ թղթատելու ըլլանք պիտի տեսնենք թէ ասպարէզը որուն մէջ ամէնէն աւելի նշանակելի եղան Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող երկիրներու Հայերը՝ զինուորականութիւնն էր։

Կապադովկիա ըլլալով մին այն նահանգներէն ուր այնքան շատ հաւաքուած էին Հայերը, բնական է որ պիտի տար զինուորներու մեծ թիւ մը և զինուորական նշանաւոր դէմքեր։ Բիւզանդական պատերազմներու մէջ գունդերը մեծամասնութեամբ այս նահանգէն էին, և կը բաղկանային Հայերէ և Արմենեակներէ։

---

(1) Միքայէլ Փսէլլոս, ծնած է 1018ին և ապրած է թերեւս մինչև 1096. ուսուցիչ, փաստաբան, դատաւոր, կայսերական քարտուղար, և խորհրդական կայսերական, և վարչապետ, եղած է խիստ ազդեցիկ քաղական անձնաւորութիւն մը։ Գրած է ժամանակագրութիւն մը 976էն 1077 թուականներուն համար։

(2) Աւելորդ է ըսել կապադովկացի բացատրութիւնը հոս ալ պէտք է Հայու իմաստով առնել, ինչպէս վերը բացատրեցի. նկատելով որ ԺԱ. դարուն կապադովկացի չի կար և մեծ մասամբ Հայ էին տեղւոյն բնակիչները։

Յուստինիանոսի շրջանին իսկ Հայ զօրքը և զօրավարները — յաճախ Պարսկական Հայաստանէն եկած և ասոր համար Պարսիկ կարծըւած — նշանակելի դեր կը կատարեն, և իրենց տաղանդով և ձիրքերով կը հասնին բարձրագոյն աստիճաններու։

Ներսէս Պատրիկ, Արտաւան, Ներսեհ Բասենցի, գլխաւոր զօրավարները Յուստինիանոսի, Հայեր էին։

Զ. դարուն սկիզբէն իսկ Արեւելեան և Յունական նկարագիր ըստացած կայսրութեան Անատոլեան խառնուրդին մէջ, նշանակելի դիրք ու դեր կատարող տարրերէն գլխաւորն էր Հայ ցեղը, Արմենեակ տարազով տակաւին զատորոշուած, սակայն բիւզանդականութեան մէջ ընկլզուելու նախասահմանուած։

Արդարև Բիւզանդական կայսրութեան մէջ Զ. դարէն սկսեալ Հայը կը խաղայ ճակատագրական դեր մը, կը հանդիսանայ ազդեցիկ տարր մը, և կը ներկայացնէ գործօն ոյժ մը, ինչպէս հեղինակօրէն կը բացատրէ Բրոֆ. Պըսըլ (W. E. Boussell, «The Roman Empire from Domitian (81 A. D.) to Nicephorus III (1081 A. D.), London, 1910, Tome II, էջ 342 և Գառնիկ Ֆընտգլեան, Ամենուն Տարեցոյց, 1926, էջ 364)։

«Պատմական պարզ ճշմարտութիւն մըն է թէ բանակաթեմերուն եւ գլխաւորապէս Արմենեակներու եւ Անատոլիկներու ձեռքն էր երկար ատեն կայսրութեան բախտը, առանց սատար եւ թիկունք ըլլալն ալ՝ էական պայման էր որ եւ է հարստութեան գահի վրայ կարենայ մնալուն»։ (Գառնիկ Ֆընտգլեան, Հայ իշխանաւորք ի Ռավեննա եւ Բիւզանդական կայսրութեան մէջ, Ամենուն Տարեցոյց, 1926, էջ 362)։

Գահակալներ և գահի թեկնածուներ անպակաս են Հայ ցեղէն ամէն անգամ որ թափուր է գահը, կամ վէճի տակ՝ յաջորդութիւնը (Նոյն)։

Հայոց գլխաւոր նախասիրութիւնը զինուորական ասպարէզն է, որով արդէն անիկա եկած է խառնուիլ Բիւզանդիոնի կեանքին և հոն ցոյց կու տայ իր գերազանցապէս մեծ ընդունակութիւնը, կայսրութեան մղած պատերազմներուն մէջ իրական և գործնական արդիւնքներ ցոյց տալով։

Բիւզանդական երկիրներու մէջ Կապադովկիա, պարունակելով ամէնէն խիտ Հայ բնակչութիւնը, բնական է ինքն հայթայթած է մեկ շատ գլխաւոր մասը այն զինուորներուն և զինուորականներուն որոնք այնքան ճակատագրական դեր կատարած են կայսրութեան մէջ։

Յուստինիանոսի օրով (527–565) պետութեան զինուորական և քաղաքային վարչութեան մէջ գործօն մասնակցութեամբ երեւելի հանդիսացող Հայոց շարքը չ՚ընդհատուիր յաջորդ ժամանակամիջոցին, թէև կայսրութիւնը բոլորովին կը քայքայուի և նախկին փառքը և փայլը կը կորսնցնէ։

Կապադովկացիներու կատարած դերին ու նշանակութեան կարկառուն փաստը այն է որ Յուստինիանոսի յաջորդներուն երրորդը նոյնիսկ Հայ մըն է, Մորիկ Հայկազն կամ Հռոմէական անունով Flavius Tiberius Mauricius, (552 - 602) որ ծնած է 539ին Արաբիսոս (Arabisse) քաղաքը Հայաստանցի ազնուական ընտանիքէ մը։

Մորիկ կայսեր Հայ ըլլալը կ՚անգիտանան իր վրայ խօսող Յոյն պատմագիրները, ինչպէս Եւագր Սքոլաստիկոս, ժամանակակից և պալատական պատմիչը, Թէոփիլակտոս Սիմոկատա՝ նոյնպէս ժամանա-



կակից, Մենանդր Պրոտիկտոր, Կենտրենոս, Գլիյկաս, Թէոփանէս վանահայր խոստովանող, Թէոփանէս Բիւզանդացի և Յովհաննէս Եփեսոսցի։ Միայն Եւագրիոս զինքը կը ներկայացնէ Հռոմէացի, այսինքն Բիւզանդացի, ինչ որ չի հակասեր իր Հայ ծագման կամ Արմենեակ մը ըլլալու կարծիքին։ Միակ Յովել ժամանակագիրը (1204 թիւին) կը հաստատէ թէ Հայ է։ Հայ պատմագիրներէն Սեբէոս անոր ազգութեան մասին չի խօսիր։ Կիրակոս Գանձակեցի կը պնդէ թէ ծնած է Օշական՝ բուն Հայաստանի մէջ։ Ուրիշ Հայ պատմիչներ առհասարակ զինքն Հայ կը ներկայացնեն։ Նոր հեղինակներէն Գելցեր անոր ծագումին վրայ խօսիլ զանց առած է իսկ Jacques de Morgan իր Histoire de Peuple Arménien ի մէջ (էջ 280) անվարան կը գրէ թէ «առաջին հայր որ կրեց թագաւոր (Basileus) տիտղոսը եղաւ Մորիկ» և անոր ծննդավայր ցոյց կու տայ Արաբիսոս ՚ի Կապադովկիա, աւելցնելով թէ «Հայաստանցի ազնուական ընտանիքէ մը» ծնունդ առած է։







ՄՈՐԻԿ ՀԱՅԿԱԶՆ ԿԱՅՍԵՐ ԴՐԱՄՆԵՐԸ
(582 - 602)

Norman Baynes. «The Cambridge Medieval Hystory հոյակապ գործին Բ. հատորին մէջ (էջ 275) ինքն ալ կը հաստատէ Մորիկի Արաբիսոսէն Կապադովկիացի մը ըլլալը, որուն համար կ՚ըսուէր թէ կը սերէր Հին Հռոմի ազնուական դասակարգէն։ Այս հեղինակը կը կարծէ թէ հետագայ ժամանակներու աւանդութիւն մը Մորիկը կը կապէ Հայաստանի հետ (Byzantinische Zeitchnft Leipsig, XIX, էջ 549)։

Իր Հայ ծագումը ժխտող ոեւէ փաստ չկայ, վասնզի «Հռոմէացի» կոչումը Արաբիսոս (Կապադովկիա) ծնած մէկու մը համար անոր ծագումը չէր կրնար լուսաբանել։ Յոյն պատմագիրներու լռութիւնը անմեկնելի չէր մանաւանդ որ Մորիկ առաջին Հայն էր որ գահ կը բարձրանար։ Իսկ իր ծննդավայրը այլեւս խնդրոյ առարկայ չի կրնար ըլլալ վասնզի 1925 Յունիսին Երուսաղէմի Տօմինիկեանց Ս. Ստեփանոս վանքին արեւմտեան կողմը, պարիսպէն 170 մեթր հեռու դաշտին մէջ, նոր տան մը հիմերը փորուած ժամանակ գտնուեցաւ մօզայիքով զարդարուած յատակ մը յունարէն սա արձանագրութեամբ։ «Հոս կը հանգչի Մորիկի քոյրը Անատոլիա, ծննդեամբ Արաբիսոնցի որ բարւոք պատերազմ պատերազմելով նուիրուեցաւ Աստուծոյ եւ ամսոյս Հոկտեմբեր 21 ինդիկտիոնի 3-ին վախճանեցաւ» (տես Revue Biblique, 1925, Հոկ. 1, թիւ 4)։ Թէև պատմութիւնը չի ճանչնար Մորիկի այս վեցերորդ քոյրը —վասնզի միայն յիշուած են Անաստասիա, Թէոկտիստա, Կլէօպատրա, Սօքաթռա և Մարի անուն քոյրերը — (տես Histoire du Peuple Arménien. Jacques de Morgan, էջ 281 թէև այլք ինչպէս Աղաւնունի եպ. (Արեւ, 2 Ապրիլ 1926, թիւ 2164) կ՚ըսէ թէ միայն երեք քոյր ունեցած է, Գորտիա, Թէոկտիստա և Դամիանա), սակայն անիկա կ՚ընծայէ անժխտելի փաստ մը, ճշդելով Մորիկի ծննդավայրը որ է Արաբիսոս բերդաւանը, Կոկի-

տոնէն 40 մղոնի չափ դէպի Արեւելք, Եարփուզ քաղաքին մօտ (Ցուցիկք Բ. հտ. էջ 67)։

Նախ քան գահ բարձրանալը, անիկա Բիւզանդական բանակները ուրիշ Հայու մը՝ Ներսէս կոտսերի հետ յաղթանակէ յաղթանակ կ'առաջնորդէ եւ ի վերջոյ Տիբեր կայսեր փեսայանալով կը բարձրանայ գահ (582-602) եւ կը կառավարէ փառքով Բիւզանդական կայսրութիւնը, եւ ցոյց կու տայ Հայոց նկատմամբ ապաշնորհ ընթացք խստութեամբ հետապնդելով Յուստինիանոսով ընդգրկուած օրթոտոքսացման քաղաքականութիւնը զօր իրագործելու համար չի վարանիր գործածել նաեւ բռնական միջոցներ, ինչպէս կը հաստատեն ազգային եւ օտար պատմիչներ։



ՀԵՐԱԿԼ Ա. ՀԻՒՊԱՏՈՍԻ ԴՐԱՄ




ՀԵՐԱԿԼ Ա. ԿԱՅՍԵՐ ԴՐԱՄ (610 – 641)

Յովհաննէս Եփեսացի (Եկեղեցական Պատմութիւն, ԲԶՄԴ. 1934, էջ 57-58) որ կը հաստատէ Մորիկի Արաբիսոսցի ըլլալը, կը գրէ թէ ան վերաշինած է 582ին իր ծննդավայրը որ երկու տարի յետոյ (584) կործանած է երկրաշարժէ։ Մորիկ զայն երկրորդ անգամ վերստին կառուցած է։

Մորիկէն քիչ յետոյ կայսերական գահ կը բարձրանայ ուրիշ Կապադովկեան ծագումով Հայ մը՝ Հերակլ Ա. (610-641) որդին երբեմն (594ին) Հայաստանի կառավարիչ եւ ապա Ափրիկէի Էքզարք Հերակլ Պատրիկին (տես վերը, էջ 302-303)։

Charles Diehl. յայտնի բիւզանդագէտը կը հաստատէ թէ Հերակլ Պատրիկ, որ Մորիկ Հայկազն Ափրիկէի ընդհանուր կառավարիչ՝ մարզպան նշանակած էր, Կապադովկիացի Հայ հարուստ եւ ազնուական ընտանիքի մը շառաւիղներէն մէկն էր եւ Jaques de Morgan, չեմ գիտեր ինչ աղբիւրներու վրայ հիմնուած (տես, Histoire de peuple Arménien, էջ 282) «թերեւս ազգական էր Մորիկի» բառերը գործածելով կերպով մը անոր կու տայ հայկական ծագում։

Հերակլ 60ամեայ ծերունի մըն էր երբ փոխարքայ ղրկուեցաւ Բիւզանդական Ափրիկէ, իրեն տեղակալ ունենալով Գրիգոր եղբայրը։ Հերակլեանք, Հերակլ ծերունին, անոր զաւակը Flavius Héraclus, եղբայրը՝ Գրիգոր եւ անոր զաւակը Նիկիտաս գրեթէ կէս դար կը կառավարեն Եգիպտոսը, ջանալով զայն խաղաղ եւ բարգաւաճ պահել մինչեւ արաբներու արշաւանքը։

Հերակլեանք՝ Կարքեդոն հաստատուած, անսահման ժողովրդականութիւն կը վայելէին հոն։

Երբ Փոկաս կայսեր (602-610) բռնութիւնները անհանդուրժելի



դարձուցին զինքն, ամբողջ Կ. Պոլիսը, Ծերակոյտը, պետական անձեր, լուր ղրկեցին որպէսզի Հերակլ Պոլիս գայ եւ տապալէ կայսրը։

Ափրիկէի ազդեցիկ Էքզարքը ուղղակի կայսեր դէմ զէնք առաւ իր նաւատորմիղը եւ բանակը շարժման մէջ դնելով

Նիկիտաս՝ Գրիգորի որդին ցամաքի ճամբով արշաւեց Եգիպտոսի վրայ եւ սաստիկ կռիւէ մը յետոյ տիրեց Ալեքսանդրիոյ։ Յետոյ Սուրիայէն եւ Պաղեստինէն անցնելով Պոլսոյ վրայ քալեց։

Մինչ իր որդին՝ Flavius Héraclius, Ափրիկեան նաւատորմիղով ուղղակի նաւարկեց դէպի Բիւզանդիոն եւ 6 Հոկ. 610ին հոն հասնելով տապալեց Փոկասը որ զոհ գնաց ժողովրդեան կատաղութեան, իր գործակիցներով։

Ծերունի Հերակլ մերժելով կայսերական ծիրանին իր որդւոյն Հերակլին հագցուցին զայն եւ հռչակեցին Օգոստոս։

Ծերունի Հերակլը մեռաւ 611ին Ափրիկէի մէջ զոր այնքան սիրած էր։ Հոն իրեն յաջորդեց եղբայրը՝ Գրիգոր որուն իշխանութիւնը վերջ գտաւ 640ին Եգիպտոսի արաբական գրաւմամբ եւ Բիւզանդական Ափրիկէի անդարձ կորուստովը (648)։

Կ. Պոլսոյ մէջ Հայ Հերակլեան հարստութիւնը փառքով կը գործէ, գոյութեան սոսկալի պայքար մը մղելով յաջորդաբար հինգ սերունդ եւ 85 տարիներ կ'իշխէ Բիւզանդիոնի գահուն վրայ։

Իր յաջորդներուն առենը մասնաւորապէս Հայ զինուորական հանճարն է որ կը գործէ պետութեան մէջ եւ պատմութիւնը կը յիշատակէ Հայ արքայական Հերակլեան կայսրերու գործակիցներուն, զօրավարներուն եւ կառավարիչներուն մէջ բազմաթիւ Հայեր, որոնք նշանաւոր դեր կը կատարեն Բիւզանդական պետութեան մէջ, որուն բոլոր երկիրներուն մէջ, Եփրատէն մինչեւ Դանուբ, մինչեւ Ռավէննա, մինչեւ Սիկիլիա, ամէն ուրեք Հայերը կը կատարեն կարեւոր դեր եւ կը փայլին իրենց տաղանդով եւ ձեռներէցութեամբ։




ԴՐԱՄ ՓԻԼԻՊԻԿՈՍ ՎԱՐԴԱՆԻ (711 – 713)

Հերակլեան Հայ հարստութեան վերջ կու տայ ծագումով Հայ յայտնի զինուորական մը Փիլիպիկոս Վարդանէս կամ Վարդան Փիլիկ (Filépicus կամ Philippicus Bardanes) (711-713) որ իրեն հայրենակից Հայերը սիրաշահելու համար միանգամ ընդ միշտ կորսուած Հայաստանը փոխանակ վերագրաւելու, արաբներէն հալածուած խոյս տուող Հայերուն բնակութեան տեղեր տուաւ աւերակ դարձած Մելետինէի եւ Դ. Հայքի մէջ (Թէոփանէս, էջ 585)(1) եւ միակամութեան դաւանութիւնը ընդգրկեց։

Ըստ Հայ պատմիչներու հրամայեց որ Յոյները Հայկական ծէսը

(1) E. W. Brooks, «The Cambridge Med. History» Բ. հտ. էջ 414, կ'ըսէ թէ «Փիլիպպիկոս անծանօթ պատճառներէ մղուած Հայերը կայսրութենէն դուրս վռնտեց եւ անոնք արաբներու կողմէ Դ. Հայքի եւ Մելետինէի նահանգին մէջ հաստատուեցան»:

գործադրեն։ Երկու տարուան մէջ իր հաճոյքներուն վատնեց բոլոր գանձը։

Ոբսիկեան թեմի զինուորականներու ապստամբութիւնը վերջ դրաւ իր իշխանութեան։ 713 Յունիս 3ին դահընկեց եղաւ։

Քիչ յետոյ Անատոլեան թեմի զօրապետը Լեւոն Իսաւրացի համաձայնութեամբ Հայկական թեմի հրամանատար Արտաւազդին — նոյնպէս Հայ(1) — կը յաջողի կայսերական գահ բարձրանալ (717 մարտ 25ին)։

Լեւոն Գ. «Իսաւրացի» (717 – 741) ծնած էր Գերմանիկէ և ըստ ոմանց Սուրիացի էր և ըստ այլոց Հայ, չի գիտցուիր թէ ինչու «Իսաւրացի» կոչուած է(2)։

Արաբական սարսափելի վտանգը՝ կարող զինուորական մը գահ բարձրացնելուն ազդակներէն մին եղած էր։ Այլեւս Բիւզանդիոն կը կորսնցնէր իր Արեւմտեան պետութեան մը հանգամանքը և կը դառնար Արեւելեան պետութիւն մը, որ պատուար կը կանգնէր արեւելեան հորդաներուն դէմ, պաշտպանելու համար դարաւոր պայքարով մը արեւմտեան քաղաքակրթութիւնը որուն ապաստան կու տար ինքն։

Փոքր Ասիացիներ են այն զօրքերը որոնք ետ կը մղեն Արեւելքի ժառանգական թշնամին, միայն ամբողջ սերունդներ տեւող պատերազմները զօրքը կատարելապէս վայրենացուցած էին։ Անիկա կատարելապէս գիտակ իր արտակարգ նշանակութեան, սանձարձակ կը տիրապետէր և երկաթէ բռունցքով մարդ մը կ'ուզէր որ պետութեան վերածնութիւնը իրագործէր։

Այդ մարդը արդարև եղաւ Լեւոն Գ. «Իսաւրացի» որ բանակը բարեկարգեց, ելեւմուտքը կանոնաւորեց և վարչական կազմը կարգաւորեց, և վանեց Արաբները և ազատեց անմիջական վտանգէ քրիստոնէութիւնը և Արեւմուտքի քաղաքակրթութիւնը։

Լեւոն Գ.ի Աննա անուն աղջկան ամուսինն էր Արտաւազդ որ Արմենեակ թեմին Ստրատիկոս (Strategus) էր և իր գործակիցը՝ Թէոդոս Գ.ի դէմ ապստամբութեան ժամանակ։

Այս ամուսնութեան առթիւ Լեւոն Գ. անոր տուաւ Կիւրոպաղատ բարձր աստիճանը, և գահաժառանգ հռչակեց։

---

(1) Արտաւազդի համար կը կարծուի թէ Պահլաւունի եղած ըլլայ (Գելցեր, Սկզբն. Բիւզ. Բանակ. էջ 46)։

(2) Finley կ'ըսէ թէ Լեւոն Իսաւրացիի ընտանիքը ո՛չ Յոյն և ո՛չ ալ Հռոմայեցի ըլլալով, այս ազգերուն կողմէ օտար կը նկատուէր, Իսաւրացիները կը թուին ըլլալ կայսրութեան այն հպատակներէն որոնք ամէնէն աւելի պահած են իրենց բնիկ ազգութիւնը։ Հայերը և Սուրիացիները, թէպէտև բազմաթիւ միշտ նկատուած էին որպէս օտարներ քան թէ ժառանգական հպատակներ։ Թէոփանոս (327-330) և Անասթաս (128) Լեւոնը կը կոչեն Սուրիացի։ Այնպէս կը թուի թէ ան ինքզինքն Հայու մը տեղ դրած է և իր աղջիկը Հայու մը տուած է ամուսնութեան (History of the Byzantine Empire from 716 to 1057 by George Finley, 1908, London, էջ 24, ծանօթ. 2)։ Edward Gibbonի «The decline and fall of the Roman Empire» նշանաւոր գործին հրատարակիչ Oliphanf Smeaton, (հրատ. 1913) կը յիշէ Finleyի վերոյիշեալ տեսութիւնը և ինքն ալ համամտութիւն կը յայտնէ։



Յետոյ զինքն կը տեսնենք «Պատրիկ, Կիւրապաղատ եւ Կոմս կայսերական աստուածապահ Ոբսիկիոնի» տիտղոսով պատուած։

Արտաւազդի նկատմամբ Լեւոն Գ.ի այս փաղաքշական ընթացքը ցոյց կու տայ իր ազդեցութեան չափանիշը որ մասնաւորապէս հիմնըւած էր Հայ զօրքին վրայ, որ ինչպէս կը տեսնուի Արմենեակ և Ոբսիկիոն բանակաթեմերուն մէջ, հաւանօրէն բնակչութեան մեծամասնութեան Հայ ըլլալուն հետեւանօք՝ ստուար էր։

Արմենեակ թեմին կամ Հայկական գումարտակին մէջ անթիւ անհամար Հայազգի զօրականներ կը ծառայէին և Լեւոն Գ. Իսաւրացիի ատեն Հայ նախարարներ (σατράπαι) և Ազատք (Ἄζατοι) Վրացիներուն հետ Հռոմէական այրուձիին (Καβαλλαρικὰ θέματα) ամէնէն ընտիր մասը կը կազմէին (Գելցեր Սկզբ. Բիւզ. Բանակ. էջ 46)։

Երբ Լեւոն Գ. մեռաւ 741 Յունիս 18ին և իշխանութիւնը թողուց իր Կոստանդին Ե. Կոպրոնիմոս (741–775) որդւոյն, կայսեր քեռայրը՝ վերոյիշեալ Հայազգի Արտաւազդ օգտուելով Պատկերապաշտներու գրգռութենէն և զօրքերու մէջ գտնուող բազմաթիւ Հայերու մասնաւոր համակրանքէն, ապստամբեցաւ 742ի սկիզբը։

Կոպրոնիմոս կայսրը — որուն «Կաւալլիկոս» անունը կու տան Յոյն և «Թրքաժողով»՝ Հայ պատմիչները — հազիւ մեկնած էր Կ. Պոլիսէն Արաբներու դէմ պատերազմի մը, երբ յափշտակիչը անսպասելի յարձակում մը գործեց իր վրայ՝ Ասիոյ մէջ։

Կոստանդին Ե. ապաստանեցաւ Ամուրիոն։ Արտաւազդ մտաւ Բիւզանդիոն և կայսր օծուեցաւ։ Արտաւազդ գնաց Ոբսիկիոյ գաւառը և նուաճեց Փոքր Ասիան։ Իսկ Կոպրոնիմոս որուն յարեցան միահամուռ ամբողջ Ասիան բացի Ոբսիկիոն թեմէն — որուն Ստրատիկոսն էր Արտաւազդ — բազմաթիւ զօրք հաւաքելով զանազան տեղերէ յաղթեց իր մրցակցին 'ի Սարդիս (Sardis) (Մայիս 742) և 'ի Մօտրինա (Modrina) (Օգոստոս 742) (Շառլ Դիլհ. Cambridge Medieval History, Գ. հտ. էջ 12), և Արտաւազդի բանակը վանեց Փոքր Ասիայէն մինչև Կիզիկոն, ուր Արտաւազդ ամրացաւ և իր Նիկէտ որդին — որ իր զօրքերուն սպարապետն էր — և Տրդատ (Teridate) Պատրիկ հօրեղբօր որդին (Բրոֆ. Ն. Ադոնց, Հայրենիք ամսագիր, Բ. տարի, Թ. 10) ղրկեց Կապրոնիմոսի վրայ։

Սակայն ասոնք պարտուեցան չարաչար։ Տրդատ Պատրիկ որ քաջ անձ մըն էր, բազմաթիւ ուրիշ երեւելիներու հետ պատերազմին մէջ ինկաւ և Նիկէտ խոյս տուաւ։ Այս և յաջորդ կռիւներու մէջ Արտաւազդի զօրքը կը բաղկանար կ'ըսուի Հայերէ և Յոյներէ և Կոպրոնիմոսի զօրքը՝ Արեւելքցիներէ և մանաւանդ Թրակացիներէ, որոնք չարաչար և անխնայ իրար կոտորեցին։

Արտաւազդ շուտով դարձաւ Կ. Պոլիս, ուր պաշարուեցաւ Կոպրոնիմոսի բանակէն, որուն հրամանատարն էր Սիսիննիոս Թրակացի (742 Սեպտ.)։

Արտաւազդ սովէն նեղուած և



ԱՐՏԱՒԱԶԴԻ (742)
ԵՒ
ԿՈՍՏԱՆԴԻՆ Ե.Ի ԴՐԱՄ

բոլորովին տկարացած, ծովէն խոյս տուաւ իր կոմսութեան երկիրները և ամրացաւ Կապադովկիոյ մէջ Պուզանա (=Պիզու, Կեսարիոյ մօտ) ամրոցը, իրեն հետ ունենալով Վասակ Պատրիկը (742 Նոյեմ.)։

Կոպրոնիմոս՝ Կ. Պոլիս մտաւ (2 Նոյեմբերին) և յետոյ ձերբակալելով հնարքով մը Արտաւազդը, կուրցուց զայն և անոր երկու որդիները՝ Նիկեփոր (Nicéphore) և Նիկէտ (Nicétas)։

Իսկ Վասակ Պատրիկ գլխատուեցաւ և երեք օր մարմինը կախուեցաւ։



ԱՐՏԱՒԱԶԴԻ
ԵՒ ՆԻԿԵՓՈՐԻ ԴՐԱՄ

Այս տեղեկութիւնները որոնք քաղուած են Յոյն պատմիչներէ (Թէոփանէս, Ս. Նիկեփոր, Կետրենոս, Զոնարաս և այլ) թերեւս կը կարօտին պզտիկ սրբագրութիւններու(1), որոնք սակայն չեն փոխեր իրողութիւններու հիմը, որոնք յայտնապէս կը հաստատեն թէ Ը. դարուն սկիզբն քաղաքային այդ պատերազմին մէջ Հայերը ինչ կարեւոր դեր կատարած են։

Հայերը նոյնպէս փայլուն դեր կատարեցին գրեթէ այդ օրերուն սկսող և մինչև կայսրութեան վախճանը տեւող «անհաւատ»ներու դէմ պայքարին՝ մանաւանդ առաջին երեքհարիւրամեայ շրջանին մէջ, որ արաբական արշաւանքներու ժամանակամիջոցն է։

Հայ զինուորական տաղանդն էր որ կը վարէր Բիւզանդական արքունիքը, գրեթէ բոլոր կայսրերու ալ իշխանութիւնը անուանական դարձնելով (Գելցեր, էջ 208)։ Փոքր Ասիոյ Հայկական գաւառներէն առնուած անձնապահ գունդերը և Արմենեակներու երկրին մէջ գործող բանակները, և այնքան Հայ զօրապետները, մասնաւորապէս Ը. դարէն յետոյ անհամեմատ կարեւոր դեր կատարեցին։

Բիւզանդացւոց բոլոր արշաւանքներուն մէջ Հայ գունդերը անուանի էին իրենց յանդուգն քաջութեամբ, անոնք անյաղթելի հետեւակազօրք և անգնահատելի հեծելազօրք էին։ Հայ վարձկան զօրքը քաջութեամբ կը կռուէր Բիւզանդացւոց համար նոյնիսկ ամենահեռաւոր սահմաններուն վրայ, Կրէտէի, Սիկիլիոյ և Իտալիոյ մէջ։

Բայց մանաւանդ անոնք քաջութեամբ կը կռուէին Արաբներու դէմ, Փոքր Ասիոյ սահմաններու վրայ, Եփրատի եզերքը և Տաւրոսի կիրճերուն մէջ, թոյլ չտալու համար որ քրիստոնեայ աշխարհը ընկճըւի Իսլամ լուծի տակ։

Այսպէս Լեւոն Դ. Խազիր (775-780) որ 778ին արաբներու Մահտի ամիրապետին դէմ փառաւոր յաղթութիւն մը շահեցաւ և գրաւեց

(1) Արտաւազդի դրամներուն վրայ կը տեսնուին Արտաւազդ և Կոստանդին Ե. միասին։ Հետեւաբար Արտաւազդ նախապէս պէտք է խորհած ըլլայ ժառանգել Լեւոն Գ.ի գահը իր աներձագին հետ և ոչ թէ զայն բոլորովին վանել։ Իսկ ուրիշ դրամի մը վրայ Արտաւազդ կ'երեւայ իր Նիկեփոր զաւկին հետ, որով ըստ Morganի կարելի է խորհիլ թէ ան իր կարճատեւ իշխանութեան ատեն (742 Յունվար-Նոյեմբեր) իրեն կայսերակից ունէր իր զաւակը՝ Նիկեփորը եւս։



Գերմանիկէն (=Մարաշ քաղաքը), այս յաջողութիւնը առաւելապէս կը պարտէր Հայերու, վասնզի այդ թուականին ժողովուած 100,000նոց մեծ բանակը, որուն ընդհանուր հրամանատարն էր Միքայէլ Լոկանոդրակոն, իր մէջ կը պարունակէր չորս զօրաբաժիններ (corps d'armée) որոնցմէ ամէն մէկուն գլուխը կը գտնուէր զօրավար մը և նշանակելի է որ չորսն ալ Հայեր էին(1)։

Ասիկա նշանաւոր ապացոյց մըն էր թէ Հայք ինչպէս իրենց զինուորական տաղանդը ցոյց կու տային և ինչպէս Բիւզանդացիք իրենց պետութեան նեցուկը և ոյժը եղող բանակներուն հրամանատարութիւնը կը վստահէին միայն Հայերու։

Արտաւազդ Մամիկոնեան ստրատեգ էր Անատոլեան բանակաթեմին, Տաճատ Անձեւացի՝ որդի Գրիգորի Բուկելլարեանին(2), Վարազտիրոց Բագրատունի՝ Արմենեակին, Գրիգորի (Մամիկոնեան) որդի Մուշեղիկ՝ Օբսիկեանին(3) (տես Գառնիկ Ֆնտգլեան, նոյն յօդուած, Ամենուն Տարեցոյց, 1926, էջ 361 նաև Asie Mineure, 1863, էջ 502. Ղեւոնդ Պատմագիր, էջ 188-190)։

Այսպէս ուրեմն ամբողջ Փոքր Ասիան բաժնուած էր 4 կամ 5 բանակաթեմերու 778ի արշաւանքին ատեն և բացի Թրակէսեան փոքր թեմէն, միւս բոլորը կը գտնուէին Հայ զօրավարներու իշխանութեան տակ։

Անոնք իրենց ոյժը կ'առնային Հայ զօրքէն որ իրենց ձեռքին տակ ունէին։

Հայերը ուրեմն Բիւզանդական բանակին գլխաւոր ատաղձն ու ոյժը կը հայթայթէին։

Հայը ամենայն ինչ էր Բիւզանդական բանակին մէջ։

Իսկ անոնց մէջ Կապադովկացիներու դերը և թիւը վստահօրէն կրնանք ըսել թէ աննշան չէր, մանաւանդ անոր համար որ Կապադովկիա անմիջական դրացին էր Արաբներուն, որոնք կը սուրային դէպի Արեւմուտք, քանդելու համար քրիստոնեայ քաղաքակրթութիւնը։ Արդարև արաբներու դէմ մղուած պատերազմներուն մէջ ամենափորձ գումարտակները, կապադովկեաններն էին և այս պատճառով իսկ շատ հարկաւոր (Հ. Գելցեր, Սկզբ. Բիւզն. Բանակ. էջ 66, օգտուելով Niceph. Aug. de velitatione bellica pract. 185, 5ff. Hase.)։

(1) Բրոֆ. Ն. Ադոնց (Հայրենիք ամսագիր, Ը. տարի, թ. 5, էջ 75) զօրքերու հրամանատարները հինգ կը դնէ, որոնցմէ մէկն էր Միքայէլ Լոկանոդրակոն յոյնը, սպարապետ կամ ստրատեգ Թրակէսեան գունդին, և անոր ընդհանուր հրամանատարի հանգամանքը չ'ընդունիր։ Թրակէսեան բանակաթեմը, Զմիւռնիոյ շրջանն էր, որ բաժնըւած էր Անատոլեան բանակաթեմէն։ Թրակէսեան կոչուած էր որովհետև այստեղի զօրամասը բաղկացած էր Թրակացի Գօթերէ։

(2) Բուկելլարեան թեմը Օբսիկեանէն բաժնուած էր։ Իր անունը առած էր bucllum բառէն, որ կը նշանակէր «զինուորական հաց»։ Այս բանակին գլխաւոր պաշտօնն էր պարենաւորման գործը։

(3) Օբսիկեանը՝ կայսերական անձնապահ գունդն էր և կը մնար մասամբ մայրաքաղաքին մէջ և մասամբ ասիական ցամաքին վրայ, մայրաքաղաքին մերձակայ ասիական հողամասերուն մէջ։ Այս պատճառով կը կրէր Օբսիկեան (լատ. obseguium բառէն) անունը։

Այս պիտանութիւնը որուն գիտակցութիւնը անշուշտ ունէր Հայ զօրքը, անխուսափելիօրէն պիտի դառնար պատուհաս մը, վասնզի ան իր քմայաճոյքները պիտի պարտադրէր։ Ինչ որ Հռոմի մէջ պատահած էր կայսրութեան շրջանին, նոյնը կրկնուեցաւ Նոր Հռոմի՝ Կ. Պոլսոյ մէջ, ուր զինուորականները իրենց գերակշիռ ազդեցութիւնը զգալի ըրին և Պրետորեան գունդերու դերը կատարեցին կայսերական ծիրանին հագցնելով շատ անգամ իրենց սիրելի դարձած զօրավարներուն։ Հետեւաբար Բիւզանդիոն եւս եղաւ թատերավայրը պալատական դաւադրութիւններու և գահուն շուրջը մղուած պայքարներու և յափրշտակութեանց, որոնց մէջ Հայ գունդերը և իրենց Հայ զօրավարները, իբր բանակին մէջ կարեւոր դիրք ու թիւ ունեցող տարր մը, շատ կարեւոր դերեր կատարեցին, և պահանջներ դրին։

Բազմաթիւ այս կարգի ելոյթներէն յիշենք այն որ Կապադովկեան Հայ զօրքը կատարեց, երբ Լեւոն Դ.ի մահէն յետոյ Կոստանդին Զ. Պերփիւռուժէն (780 Սեպտ. 8–797 Օգոստ. 15) գահ բարձրացաւ իր մօրը՝ Իրէնէ կայսրուհիին խնամակալութեան տակ։ Իրէնէ որ իր ձեռքին մէջ ունէր իշխանութիւնը երբ փորձեց կապտել իր որդւոյն իրաւունքները, Կապադովկեան Հայ և Արմենեակ զօրքն, կայսեր իրաւունքներուն պաշտպան կանգնեցան, 789ին ըմբոստանալով և պահանջելով որ Կոստանդին և իր մայրը հաւասար իրաւունքով գահակալեն (Թէոփանէս, Կենտրենոս և Զոնարաս)։ Իրէնէ թագուհին կայսրութեան ամէնէն կարեւոր ոյժը եղող այս բանակը սիրաշահելու և համոզելու համար որ համակերպի զինք ճանչնալու կայսրուհի, ղրկեց Մուշեղ Հայ իշխանը որ պալատական պահապան գունդի պետը կամ ինչպէս կը կոչէին Վիգլի դրունգարն էր և Յոյներէն Ալէքս Մուշեղ անունով կը ճանչցուէր։

Սակայն ընդհակառակը զօրքն էր որ շահեցաւ Մուշեղի սիրտը, և զայս կարգեց իշխան և զօրավար, բանտարկելով իրենց նախորդ հրամանատար՝ Նիկեփորոսը։

Ալէքս Մուշեղի գլխաւորութեամբ ըմբոստացած Հայ բանակը այս անգամ պահանջեց Իրէնէի մեկուսացումը և միայն Կոստանդինը ճանչցաւ կայսր։

Հայկական բանակաթեմին այս ըմբոստացումը թելադրական եղաւ և ուրիշ թեմեր եւս անոր օրինակին հետեւեցան և յաջողեցան Իրէնէն բանտարկել տալ և Կոստանդինի ապահովել գահը։

Կոստանդին Զ. երախտապարտ Ալէքս Մուշեղը կարգեց զօրավար Արմենեակներու բանակին, սակայն երբ կառավարութեան ղեկը ստանձնեց, ինկաւ ներքինիներու ազդեցութեան տակ, և ականջ կախելով անոնց գաղտագողի շշուկներուն թէ Ալէքս Մուշեղ փառասիրական մեծ ծրագիրներ ունի, տմարդօրէն կուրցնել տուաւ մեծ իշխանը, որուն պարտական էր իր գահը (Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, Թ. 5, էջ 77. տես նաև վերը, Թէոփանէսի տողերը, էջ 356)։

Հայերը ասոր վրայ գրգռուեցան, նորէն ոտքի ելան, այս անգամ ապերախտ Կոստանդինի դէմ, բանտարկելով իրենց նոր հրամանատարը՝ Թէոդոսը (792)։

Կոստանդին Զ. անոնց դէմ ղրկեց երկու Հայեր, Կոստանդին Արտաշիր Հայ իշխանը, իր անձնապահ բանակին հրամանատարն ու իրեն մտերիմը և Քրիւսոքերէս անունով պաւղիկեան աղանդաւորը, որ Բու-



կելարեան թեմի զօրավարն էր և Տաճատ Անձեւացիի յաջորդը՝ 790էն սկսեալ։ Ասոնք բուռն պատերազմէ մը յետոյ ընկճեցին Արմենեակ թեմին Հայ զօրքը։

Կոստանդին ի վերջոյ չարաչար պատժուեցաւ վասնզի իր հարազատ մայրը Իրէնէ որ վերստին կոչուած էր կայսրութեան, կուրցուց զինքը (797 Օգոստ. 15) և գահընկէց ըրաւ և վարեց իշխանութիւնը երկու ներքինիներու խորհուրդով։ Սակայն իր զզուելի իշխանութիւնը երկար չտեւեց, վասնզի ամենազօրաւոր պաշտօնեաներու և մեծամեծներու — որոնք մեծ մասամբ Հայեր էին — դաւադրութեամբ 802 Հոկտեմբերին գահազուրկ եղաւ և անոր տեղը բռնեց ելեւմտական ընդհանուր նախարար Նիկեփորը (802–811)։

Իրէնէ զոհ գնաց իր ձախորդ քաղաքականութեան։

Անիկա չեղեցաւ այն քաղաքական և կրօնական շաւիղէն, որ գծած էին իր նախորդները և ուզեց ծառայել աւելի յունական ազգային շահերուն քան տիրող պայմաններու անսալ։

Իրմով վերջ գտաւ Իսաւրեան տունը, որուն վերջալոյսին ականաւոր դէմքեր, Հայ նախարարական տուներէ՝ գլխաւորապէս Մամիկոնեան, խմբուած էին Բիւզանդիոն (Հմմտ. Բրոֆ. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, Թ. 5. էջ 78) Կապադովկիայէն հոն փոխադրուելով, վասնզի այս տունը հաստատուած էր Արմենեակ թեմին մէջ, Ը. դարուն կէսերը, հաւանօրէն Հայաստանի մէջ ծաւալող կուսակցական պայքարին հետեւանօք (տես Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, Թ. 6)։

Հայ ոյժերու յենարանն էր Արմենեակ թեմը իր զօրաբանակով, որ բաղկացած էր մեծ մասամբ Հայերէ և կը գտնուէր Հայ զօրավարներու իշխանութեան տակ։ Այս զօրաբանակը կայսրութեան ռազմական ոյժերու փայլն էր սկիզբէն իսկ, իսկ Հայ զօրավարներն էին և կը մնային մինչև վերջը զինուորական արուեստի անգերազանցելի վարպետները։

85ամեայ կառավարութենէ մը յետոյ կը կործանէր Իսաւրեան հարստութիւնը և դիտելի է որ այս անգամ փոխանակ զինուորականութեան քաղաքային պաշտօնատարներու ղեկավարութեամբ կը կատարուէր այս յեղափոխութիւնը։

Իսաւրեան տան բնական յաջորդները Հայերն էին։

Գործող ոյժերու փոխ–յարաբերութիւնը աս կը թելադրէր։ Դիպուած մըն էր որ Իրէնէէն յետոյ գահը ինկաւ Նիկեփոր Ա. Լօգօթէտի ձեռքը, որուն ծագումին մասին Բիւզանդական երեւակայութիւնը աւելի ցնցող առասպել չէր կրնար յերիւրել քան ան, թէ անիկա Արաբ էր և նոյնիսկ թագաւորական ցեղէ։ Ժողովրդային համակրութիւնը Նիկեփորի կողմը չէր և հետագային աւելի դարձաւ իր կեղեքիչ արծաթասիրութեան համար։ Հազիւ թէ գահ բարձրացաւ՝ սկսան խռովութիւնները։

Նիկեփոր տուրքի ենթարկեց, թերեւս իր կորովի ելեւմտական Հայ նախարարին՝ Արշաւիր Գանձապահի թելադրութեամբ, նոյնիսկ եկեղեցիներու և վանքերու կալուածները, Իրէնէի կործանարար մսխումներով քայքայուած տնտեսութիւնը վերակազմելու համար։ Ասիկա տեղի տուաւ դժգոհութիւններու, որոնք պատճառ եղան որ Արեւելեան հինգ բանակներու Սպարապետը՝ Վարդան Պատրիկ մականուանեալն

«Թուրք»(1), այլ ծագումով Հայ, իր բանակներուն կողմէ կայսր հռչակուի 803 Յուլիս 19ին։

Վարդան, հաւանօրէն Կապադովկիա հաստատուած Մամիկոնեաններէն, (տես Գառնիկ Ֆընտգլեան, նոյն և G. Schlumberger, «Les Iles des Princes», էջ 75) որ առաջին զինուորական դէմքն էր պետութեան, Նիկեփոր վերին հրամանատար կարգած էր Արեւելեան հինգ բանակաթեմերուն, որոնց ամբողջ վերակացութիւնը և հոգն իրեն յանձնուած էր։ Իր տիտղոսն էր «Մոնոստրադիգ» (Monostrategos), այսինքն մենասպարապետ(2), իսկ իսկական թեմն էր Անատոլեանը։ Անիկա նկատուած էր կայսրութեան լաւագոյն ռազմագէտը և արաբներու վրայ նշանաւոր յաղթանակներ տարած էր (G. Schlumberger, նոյն գործը, էջ 75)։ Վարդան ունէր իրեն գործակից իր երեք սուսերակիրներն (սպաթարներ), Լեւոն, Միքայէլ, Թոմաս, որոնք հռչակաւոր եղան ապագային։

Երբ զօրքը զինքը կայսր հռչակեց, նախ վարանեցաւ և շատ ուշ տեղի տուաւ իր զինուորներու բռնութեան առջև։ Սակայն անգամ մը ապստամբելէ յետոյ, համը առաւ իշխանութեան։ Առաջացաւ դէպի մայրաքաղաք, ճեղքելով Փռիւգիան և Բիւթանիան և եկաւ բանակեցաւ Խրիսուպոլիս (տես նոյն, էջ 76)։ Կը հաւատար թէ մայրաքաղաքը ինքնաբերաբար պիտի հնազանդէր իրեն և դուռները բանալով պիտի ընդունէր զինքը։

Սակայն հակառակը պատահեցաւ։ Բիւզանդիոն անտարբեր մնաց. իր երկու զօրավարները, Լեւոն և Միքայէլ, զինքը լքեցին և Նիկեփորի կողմը անցան։ Վարդան դարձաւ Բիւթանիա երբ մանաւանդ իմացաւ թէ Նիկեփոր Հելլեսպոնտոսը անցնելով իր բանակը կռնակէն պաշարել պիտի փորձէ։ Վարդանի փորձը վիժեցաւ և ինքն պատժուեցաւ աչքերը կորսնցնելով և Բռօթի կղզին աքսորուելով։

Վարդանի ձախողութեան պատճառներէն մէկը, հաւանօրէն այն էր որ Արմենեակ թեմը չեզոք դիրք բռնեց (Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, թ. 5, էջ 78), կամ Կապադովկիոյ զօրքերը մերժեցին օգնել ապստամբ զօրավարին (G. Schlumberger, «Les Iles des Princes». էջ 74)։

Հաւանօրէն Գրիգոր որդի Մուշեղակի, որ այդ միջոցին զօրավար էր Արմենեակի, չուզեց դէմ ելլալ Նիկեփորի որուն բարձրացման նպաստած և գործակից եղած էր (նոյն)։

---

(1) Այս մականունը կը կարծուի թէ Քերսոնի ճակատին վրայ թուրքերուն հետ կռուած ըլլալուն համար տրուած էր (տես Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, թ. 5, էջ 78), կամ «կուրտ» է՝ ինչպէս կը կարդացուի Բիւզանդական ժամանակագիրի մը՝ Սիմէոն Լոգօթէտի Սլաւոն թարգմանութեան մէջ (Sreznevski Petersburg· 1905, էջ 88 և Հայրենիք, նոյն, էջ 78)։ Կուրտը կը թուի ըլլալ նոյնը Կուրտիկ կամ Քուրտիկ անունին հետ, որ սեփական էր Մամիկոնեան տան։

(2) Տիտղոս որ Մ. Խորենացի իր պատմութեան մէջ կը գործածէ Արտաւազդ Մանդակունիի համար (Խորեն. Գ. դպ. Ձ. գլ.) զայն կոչելով միագլխապետ: Ձեռագիրներէն ոմանք ունին «միագլուխ սպարապետ» (տես Խորենացի, տպ. Թիֆլիս, 1913, էջ 212)։



Նիկեփորի դէմ հինգ տարի յետոյ (808 Փետր.) ծառացաւ նաև ուրիշ Հայ մը։ Իր եկեղեցական նախարարը՝ «Արշաւիր Գանձապետը և պատրիկը, բարեպաշտ և ամենահմուտ անձը, կայսր անուանեցին» (Թէոփանէս Խոստովանող, էջ 750)։

Սակայն այս փորձն ալ վիժեցաւ։ Նիկեփոր՝ որուն իշխանութեան շրջանին բոլոր կարեւոր դէմքերը Հայեր էին, Պուլկարներու դէմ մղուած պատերազմին մէջ մեռաւ (26 Յուլիս 811)։

Քիչ յետոյ 813 Յուլիս 10ին վերջապէս գահը կը վիճակէր Լեւոն Հայկազնի որ իբր սպարապետ Արմենեակ և Կապադովկեան երկու բանակներու, Վարդան «Թուրք»ի յաջորդած էր։

Հայ զօրքը վերջապէս իր ազդեցութիւնը ցոյց կու տար։

Լեւոն Ե. Հայկազն Հայկական բանակաթեմին զօրավար կարգեց (813) իր տեղը՝ Մանուէլ Հայ զօրավարը, որուն եղբայրը՝ Մարինոս 810ին, Նիկեփորի ժամանակէն սկսեալ «Տորմապետ» (տուրմարք= ծովակալ) էր Բիւզանդական նաւատորմիղին։

Լեւոն Ե. Հայկազն պատկերամարտ դարձաւ և թերեւս ասոր համար սպանուեցաւ (820 Դեկտ. 25)։ Իրեն յաջորդը ծննդեամբ Ամորիոն քաղաքէն Միքայէլ Բ. Թլուատ, պաւղիկեան աղանդաւոր Հայ մը կը թուի, թէեւ զօրաւոր փաստեր կը պակսին (Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք, Ը. տարի, թ. 6, էջ 105)։



ԼԵՒՈՆ Ե. ՀԱՅԿԱԶՆԻ ԴՐԱՄ
(813 – 820)

Հազիւ թէ անիկա գահակալած էր երբ իր դէմ ելաւ Թոմաս ծեր զօրապետը, 822ին, ապստամբելով Փոքր Ասիոյ մէջ, և երեք տարի անընդհատ մաքառեցաւ իշխանութիւնը կորզելու համար իր նախկին զինակցին ձեռքէն։

Թոմաս որ Արմենեակ թեմի ծընունդ Հայ մըն է (տես փաստարկութիւնը, Բրօֆ. Ն. Ադոնց, Հայրենիք Ը. տարի, թ. 6, էջ 106), իր զինուորներէն շատ սիրուած էր։ 813ին փէտէրատներու տուրմարխ, այսինքն օտարականներէ կազմուած գունդին պետ կարգուած էր։

Իր ապստամբութեան ատեն իրեն գործակցած են Արմենեակ թեմին զօրքերը հակառակ իրենց զօրավարին որ հաւատարիմ մնացեր էր Միքայէլ կայսեր։

Թոմաս կայսրը օծուեցաւ Անտիոքի պատրիարքէն 822ին, և յաղթական առաջացաւ մինչև Կ. Պոլիս և պաշարեց մայրաքաղաքը, և անշուշտ պիտի յաղթանակէր եթէ Պուլկարները չգային փրկել Միքայէլը։ Վերջապէս Թոմաս 824 հոկտեմբերին անձնատուր եղաւ և սովորական տանջանքներով սպանուեցաւ։

Միքայէլ կայսրը իր որդին Թէոփիլոսը, 821 Մայիս 12ին ամուսնացուց գեղեցիկ Թէոդորայի հետ որ եղբօրը աղջիկն էր ժամանակին ամէնէն զօրաւոր և ազդեցիկ զինուորականին, Արմենեակ թեմի Հայ զօրավարին՝ Մանուէլ Մամիկոնեանի, և հաւանօրէն ծնած էր Կապադովկիա։ Քիչ յետոյ՝ 829ին այդ ազդեցութիւնը գերազանց եղաւ երբ Միքայէլի յաջորդեց Թէոփիլոս (829–842) այս խիստ փառաբանուած՝ բայց իրապէս աննշան իշխանը որուն յատկութիւններն

*էին, մեծութեան ցնորք արեւելեան Սուլթաններու օրինակով և ամենագէտ ըլլալու յաւակնութիւն։*

*Իր իշխանութեան ատեն իրեն գործակից ունենալու բախտը ունեցաւ Մանուէլ Մամիկոնեանը որ Լեւոն Ե.ի և Միքայէլի ատենէն սկսեալ երեւելի եղած էր արդէն իր զինուորական տաղանդովը։ Թէոփիլոս զայն սպարապետ կարգեց Արեւելեան զօրաց (Թէոփանոս Շարայարեալ՝* Արմենեակ թեմի *ըսած է, սակայն Թէոփիլի պատմութեան մէջ* Անատոլիկեան թեմին) *և յաջորդ պատերազմներուն մէջ իր քաջութեամբ քանի մը անգամ փրկեց Թէոփիլոսի կեանքը և բարձր պատիւներու արժանացաւ։ Կայսրը զինքը կը կոչէր յաճախ «բարերար և փրկիչ» (տես* Հայրենիք, *Ը. տարի, թ. 6, էջ 114)։*

*Մանուէլի դիրքը չար նախանձը շարժեց պալատականներու։* «Եւ այն մարդը, *կը գրէ պատմագիրը,* որ ճակատեր էր բիւրաւոր թշնամիներու դէմ եւ ազատեր էր կայսեր կեանքը ընկնուելու մի քանի վտանգի անձերու հուրբեան առջեւ», *և խոյս տուաւ Ասորիքի ճամբով ամիրապետին քով* (830)։

*Թէոփիլոս յետոյ զղջաց և միջոցներ ձեռք առաւ ետ բերելու համար հռչակաւոր զօրավարը։ Արդարև եօթը ամիս յետոյ* (831 *Նոյեմ*) *Մանուէլ դարձաւ և կայսրէն մեծ պատիւներ ստացաւ, մագիստր(ոս)-ութիւն առաւ և նշանակուեցաւ սքոլորներու (այսինքն պալատական զօրքերու) Դոմեստիկ(ոս) (Կեննեսիոս,* 63, *Թէոփ. Շար.* 119–121) *և նոյնիսկ կ'ըսուի թէ կայսրը անոր զաւակներուն կնքահայր եղաւ։*

*Բրոֆ. Ն. Ադոնց (տես* Հայրենիք, *Ը. տարի, թ. 7, էջ* 83–84) *բոլորովին անտեղի կերպով չէ որ կը կարծէ թէ Մանուէլ Մամիկոնեանի դարձը դիւրացուցած է Թէոփիլ կայսեր, Լեւոն Հայկազն կայսեր սպանիչները պատժելու որոշումը որ պետութեան գործօն ույժերը — որոնք առաւել-ապէս կեդրոնացած էին Հայկական շրջաններու մէջ — սիրաշահելու և անոնց գոհացում տալու միտումովը կրնար կատարուած ըլլալ։*



ԼԵՒՈՆ Զ. ԻՄԱՍՏԱՍԷՐԻ ԴՐԱՄ
(886 – 912)

*Իր հայրը՝ Միքայէլ արդէն կարեւոր քայլ մը առած էր Մամիկոնեան ազգեցիկ տունէն աղջկան մը հետ ամուսնացնելով զինքը և ինքն Թէոփիլ ապաժամ արդարութիւնը գործադրելով Լեւոնի սպանիչներուն համար, կրկին կը ջանար սիրաշահիլ Հայերը և իր շուրջը համախմբել զանոնք։*

*Թէոփիլոսի մահէն յետոյ կայսր հռչակուեցաւ իր երեք տարեկան տղան՝ Միքայէլ Դ. Արբշիռ կամ Հարբեցող* (842 – 867) *երեք Հայերու խնամակալութեան տակ։ Ասոնք էին Թէոդորա կայսրուհին, Վարդ կամ Բարդաս Հայկազն և Մանուէլ Մամիկոնեան, երեք Կապադովկեան ծագումով Հայեր, որոնք իրենց շուրջը ունէին դարձեալ Կապադովկեան ծնունդ՝ Հայ և Արմենեակ զինուորներ և զօրապետներ։*

*Արդէն յիշուեցաւ ասոնցմէ Պետրոնասը՝ Թէոդորա կայսրուհիին կրտսեր եղբայրը, որ Արմենեակ բանակաթեմին զինուորներու շնորհիւ յաղթեց Մալաթիոյ էմիր Օմարին* (863 *սեպ.* 3) *(տես վերը, էջ* 309)։

*Կապադովկիա որ պահ մը կրել պարտաւորուած էր արաբական*



*լուծը և ճաշակած անոր դառնութիւնները՝ Վասիլ Ա. Մակեդոնացի* (867–886) *ծագումով Հայ (Դեկցեր, էջ* 195) *կայսեր ատեն վերստին ամբողջութեամբ Բիւզանդական իշխանութեան ենթարկուելէ յետոյ, արաբներու դէմ մղուած պատերազմներուն կարծես թէ աւելի եռանդով բերաւ իր մասնակցութիւնը, Բիւզանդական բանակներուն տալով իր ընտրելագոյն զաւակները՝ իբր զինուոր։*

*Եւ քանի որ հոն մեծ էր Հայոց թիւը, բանակին մէջ ալ մեծ էր անոնց թիւը, և ասոնցմէ շատեր կը հասնէին բարձր աստիճաններու իրենց անհատական քաջութեամբ կամ ձիրքերով։ Այս օրերուն է որ պատմութեան ասպարէզ կու գայ առաջին անգամ Դուրգէն կամ Դուրգուաս կապադովկեան Հայ ծագումով ընտանիքը, որ Զմշկիկ և Փոկաս ընտանիքներուն հետ, իրապէս մեծ համբաւ ունէր, իբր Փոքր Ասիոյ ամէնէն ազնուական ընտանիքներէն մէկը (Հմմտ.* Abbé Albert Vogt. *տես* Cambridge Med. Histoty, *Դ. հտ. էջ* 69)։

*Վասիլ Ա. կայսեր* (867–°86) *զօրավարներէն մէկն էր Յովհաննէս Դուրգէն։ Ուրիշ մըն էր Ռոմանոս Լեկաբենոս* (920-944) «պարզապէս խեղճ զինուոր մը՝ Արմենիակներու թեմէն» *(տես* Abbé Albert Vogt. Cambridge Med. Hist. *Դ. հտ. էջ* 61) *որ կը բարձրանար մինչև կայսրութեան հետըզհետէ զանազան աստիճաններէ անցնելով (տես էջ* 311)։

*Ան իրեն գործակից և նեցուկ ունեցաւ ուրիշ Յովհաննէս Դուրգէն մը որ իր հայրենի նահանգին զինուորական հրամանատարն էր և ինչպէս տեսնուեցաւ (տես էջ* 311–313) *քսաներկու տարի անընդհատ մաքառելով արաբներու դէմ Բիւզանդիոնի նոր փառք և փայլ պարգեւեց։*

*Իրեն հետ ուրիշ Դուրգէններ, ինչպէս Թէոփիլոս, եղբայրը կամ զաւակը, և Ռոմանոս, իր մէկ ուրիշ զաւակը, նոյնքան փայլուն դեր կատարեցին։*




ՌՈՄԱՆՈՍ Բ.Ի (959 – 963) ԴՐԱՄ

*Ռոմանոս Դուրգէն՝ մասնաւորապէս Նիկեփոր Փոկասի* (963–968) *իշխանութեան ատեն, իբր զօրավար Կապադովկիոյ թեմին կամ ըստ Կենդրենոս պատմիչին՝ իբր Սդրագեղատ Անատոլիոյ (Արեւելից) կատարեց կարեւոր դեր (Դուրեան,* Ազգ. Պատմ. *էջ* 352 *և* Un Empereur Byzantin du dixième siècle, *էջ* 279)։

*Ասոնց ժամանակակցաբար գործօն դեր կը կատարեն Փոկաս Հայ Կապադովկեան ընտանիքին անդամ նշանաւոր զօրավարները, որոնց վրայ արդէն խօսեցայ (տես վերը, էջ* 313-324)։ *Ռոմանոս Լեկաբենոսի կայսրութեան շրջանէն սկսեալ այս ընտանիքը, որ իրեն հայրենակից Դուրգէններու և Զմշկիկներու հետ այնքան նշանաւոր հանդիսացած էր յաւիտենական թշնամիին դէմ մղուած պայքարին մէջ, հուսկ ուրեմն կայսերական գահը ձեռք բերաւ, վասնզի Նիկեփոր Փոկաս, օժանդակութեամբ Դուրգուաս և Զմշկիկ երկու զօրավարներուն կայսր հռչակուեցաւ* (963 *օգոս.* 16) *և բացաւ Բիւզանդական կայսրութեան համար փառքի նոր շրջան մը, որուն հիմնադիրը հանդիսացաւ*



ՌՈՄԱՆՈՍ Բ.Ի ԵՒ ՎԱՍԻԼ Բ.Ի ԴՐԱՄ

*ինքն՝ Նիկեփոր Փոկաս, ամրապնդողը՝ իրեն պէս Հայ և Կապադովկացի անուանի զինուորականը Յովհաննէս Զմշկիկ*(1) (969-976) *և զայն անխորհուրդ մեծամտութեամբ մը և կոյր փառասիրութեամբ մը՝ անհեռատեսօրէն առանց ներքին ուժի և զօրութեան ընդարձակողը՝ Վասիլ Բ. Պուլկարասպան (=Բասիլէյոս Պուլկարակտոնաս)* (976-1025), *դարձեալ Հայ բայց ոչ Կապադովկացի կայսրը։*

*Այս անօրինակ փառքի շրջանին, ուր Հայ զինուորական տաղանդը իր բարձրութեան կը հասնի և պետութիւնը իր իսկական զէնիթին* (*Գելցեր, էջ* 226), *Հայերը կը շահին աննման փառք, պետութիւնը փրկելով արաբական լուծին ենթարկուելէ։ Այդ Ժ. դարը Հայոց զինուորական գերզօրութեան շրջանն էր։ Հայկական զօրաբաժինները բազմաթիւ են և մեծապէս գնահատուած կայսերական բանակին մէջ (Շարլ Տիհլ,* «Cambridge Medieval History», *հտ. Դ. գլ. ԻԴ. էջ* 738)։ *Այս զօրքերը կ'առնուէին Փոքր Ասիայէն ուր ամենամեծ թուով Հայեր խտացած էին, և այդ մեծամասնութեան և անկէ կազմուած գործօն ու քաջ բանակին վրայ յենած, զինուորական մեծ դէմքերը — որոնք մեծ մասամբ Հայեր էին և կը գործէին Հայ զօրքերու օգնութեամբ — կայսերական գահուն շուրջը պայքար կը մղէին։*

*Անոնք իրենց յաջողութիւնները պարտական ըլլալով Հայ զինուորին, Հայ բնակչութեան մասնաւոր շնորհուկներ ըրած են։*




ԴՐԱՄ ՆԻԿԵՓՈՐ ՓՈԿԱՍԻ (963 – 969)

*Նիկեփոր Փոկաս, որուն համար ըսի թէ իր ծննդավայրը՝ Կապադովկիան, մասնաւորապէս հոգացած է, նոյնպէս նաև Հայերու նկատմամբ ցոյց տուած է բացառիկ բարեացակամութիւն մը, ինչպէս մասնաւոր կերպով չեշտած են Յոյն պատմագիրները (տես վերը, էջ* 374, 382 *և* 387)։

*Ան իր բանակին մէջ բացառիկ կերպով չփացուցած է Հայ զինուորները, որոնց սանձարձակութիւններուն հանդուրժած է հակառակ անոր որ շատ ալ գոհ չէր անոնց գործելու եղանակէն, ինչպէս կը հասկցուի իր պատերազմական արուեստին վրայ գրած մէկ գործէն որ մեզի հասած է։ Ան հետաքրքրական տեղեկութիւններ կու տայ Հայ զինուորներուն վրայ։*

*Անիկա կը գանգատի* Հայ պահապաններէն, *որոնց կ'ըսէ թէ կարելի չէ վստահիլ, վասնզի կը ձանձրանան* իրենց պաշտօնէն եւ անհոգութիւն *կ'ընեն* (Հայ Կայսերք Բիւզանդիոնի, *Հ. Կ. Տէր Սահակեան, Վենետիկ,* 1905, *Բ. հտ. էջ* 228)։ *Իբր թէ ընիկներէն իր կազմած գունդերը՝ պահպանութեան համար թոշակ կ'առնէին և իրենց պաշտօնին անուշադիր էին*(1)։ *Ընդհակառակը Նիկեփոր՝ յարձակման համար պիտանի կը տեսնէ Հայկական գունդերը,* «երբ *կ'ըսէ* հոծ բազմամբոխ բանակի մը պարենաւորման եւ ջուրին յուրը կ'առնէք — ան սովորաբար Օգոստոս ամսուն կը հանդիպի — մեծախումբ բանակներ զօրաժողով կ'ըլլան, վասնզի այս ամսուն մէջ գունդագունդ գումարտակներ Եգիպտոսէն, Պաղեստինէն, Փիւնիկէէն եւ Սուրիայէն դէպի Կիլիկիա եւ Անտիոքի եւ Հալէպի շուրջը կը համախմբուին եւ Սեպտեմբեր ամսուն արաբներու հետ եւս միանալէն յետոյ, Հռոմէական պետութեան վրայ կ'սկսին արշաւել: Արդ թշնամի գումարտակներու ի մի համախմբուելու ժամանակը պէտք է ստէպ ստէպ սուրհանդակներ եւ Հայոց *Տասնակիք*(2) (յն. Τασιναρίους) կոչած մարդիկը եւ դեռ ուրիշ շատ մը վստահելի ու յաջողակ լրտեսներ ղրկել: Վաճառականներու եւս մուտքը ձգելու է: Դարձեալ բարեկամ ձեւանալու է մեզի սահմանակից լեռներու վրայ հաստատուած դղեակներու (κάστρα) հրամանատար-էմիրներուն: Անոնց նամակ եւ պարգեւներով ծառաներ ղրկելու է: Այսպիսի բազմաձեւ ու բազմակերպ ճարտարութեամբ շատ անգամ կարելի է թշնամիին ծրագիրը եւ դիտաւորութիւնը, հաւաքուած ձիաւոր եւ հետեւակ զօրքերուն թիւը, զօրավարներու անունները եւ երկրին ո՛ր կողմն արշաւել մտադրած ըլլալնին ստոյգ իմանալ: Արդ յարձակող բանակին ընելիք ճամբուն վրայ ապահով տեղեկութիւն առնելէ ետքը, բոլոր գունդերը գումարելով սահմանագլուխի կիրճերը բռնելու է: Յետոյ ձիաւորաց ընտիր գունդով փորձառու վաշտապետ մը եւ կամ ուրիշ բարձրաստիճան ու ճարտար զինուորական մը՝ թշնամիին մեր վրայ յարձակելէն առաջ անոր դէմ ղրկելու է: Իսկ ասիկա թշնամիին հետքերուն հետեւելով, զանոնք լաւ մը դիտէ եւ թշնամիին ամէն մէկ ճամբան վրայ ընդհանուր հրամանատարին միշտ տեղեկութիւն տայ» (*Գելցեր*, Ակզ. Բիւզն. բանակ. էջ 61-63)։

*Մասնաւորապէս Նիկեփոր իր տասնակիք կոչած Հայ Նախայարձակ գունդերուն համար ըսած է թէ այնքան եռանդով և ճարտարութեամբ կը կռուին, որ ողջ ողջ թշնամիները բանակ կը բերեն և զանոնք տանջելով՝ կարելի է տեղեկութիւններ ստանալ։*

---

(1) *Զմշկիկ թոռն էր Թէոփիլոս Գուրգէնի, Միջագետաց զօրավարին, հետեւաբար Կապադովկեան այդ մեծ ընտանիքին սերունդէն, որմէ դարձեալ երրորդ Յովհ. Գուրգէն մը, կարեւոր դեր մը կը կատարէ Զմշկիկի կայսրութեան շրջանին և կը մեռնի 971ին ընդդէմ Ռուսաց մղուած պատերազմին մէջ։*

(1) *Նիկեփոր իրաւունք ունէր այս գանգատը ընելու, որովհետև Լեւոն Հայկազն — ուրիշ պարագաներու այնքան քաջ — պահպանութեան մէջ լաւագոյն ձիրք ցոյց չէ տուած։ Եւքայիտեանց գիւղին մէջ գտնուած ժամանակ այնքան զբօսանքի անձնատուր եղաւ որ արաբները յարձակեցան, գրաւեցին ամբողջ գումարը որ ամիսներ առաջ պէտք էր բաժնուած ըլլար զօրքերուն՝ իբրև թոշակ (Հ. Կ. Տէր Սահակեան,* Հայ Կայսերք Բիւզանդիոնի, *Վենետիկ,* 1905, *Բ, հտ. էջ* 228)։

(2) *Այս բառին համար Գելցեր* (Ակզբն. Բիւզ. Բանակ. *էջ* 62) *կ'ըսէ թէ* Տասնարք *կամ* Յասնարիք *ըլլալու է։ Եթէ վերջինը ճիշդ է կարելի է թերեւս կարդալ* Տասնակիս, *որ իմաստին շատ լաւ կը յարմարի։ Սակայն կը խոստովանի թէ ենթադրութիւն մըն է իր մեկնութիւնը։ Հ. Կ. Տէր Սահակեան* (Հայ Կայսերք Բիւզանդիոնի *Բ. հտ. էջ* 229) *այս բառը կը կարդայ* թասինարիի (τοσινάριος) *կամ* թասինաքիա, *որ ըստ Նիկեփորի հայերէն բառ մըն է և լրտես կը նշանակէ։*

Նիկեփոր իր անձնական փորձառութենէն օգտուելով նոր օրէնք դրաւ Հայկական fundiներու՝ այսինքն այն հողերուն համար զորս ծառայութեան մէջ գտնուող Հայ վարձկան զինուորներ ստացած էին իրենց թոշակներուն տեղ, որոշ յանձնառութիւններով որոնք սակայն միշտ չկատարեցին(1) (Հմմտ. Abbé Albert Vogt. Cambridge Med. Hist. Դ. հտ. էջ 76):

Այս ճորտերը, որոնք հող ունէին և զինուոր կը հաստատուէին Նիկեփոր Փոկասի կողմէ մասնաւորապէս Կապադովկիոյ մէջ, Տաւրոսի անցքերուն հսկելու և զանոնք պաշտպանելու նպատակով, գլխաւորապէս Հայեր էին, այնքան նշանաւոր հանդիսացած իրենց մղած պատերազմներուն մէջ: Schlumberger կ'ըսէ թէ «Հայկական թեմին ու ուրիշ հեռաւոր փոքր թեմերու Հայ զօրքերը, նոյն կամ նիզակակից Հայ իշխաններու առաջնորդութեամբ, նշանաւոր հանդիսացան արաբներու դէմ մղուած կռիւներուն մէջ» (Նիկեփոր Փոկաս. էջ 83):

Իր յաջորդը՝ Յովհաննէս Զմշկիկ (969-976) օտար աստղերու տակ գործող մեծագոյն Հայը, «իր դարուն մեծագոյն զօրավարն ու քաղաքագէտը» (Գելցեր) և «Բիւզանդիոնի կայսերաց մէջ ամէնէն քաջը եւ թերեւս ամէնէն լաւը» (G. Schlumberger, L'Epopée Byzantine à la fin du dixième siecle — Jean Tzimiscès. Les Jeunes années de Bazile II. Le Tueur des Bulgares (969-989), Paris, 1896, էջ 314). որ ըստ Abbé Albert Vogt.ի (տես Cambridge Med. Hist. Դ. հտ. էջ 78) կը սերէր Հայ հին և ազնուական ընտանիքէ մը, հօր կողմէ ազգական ըլլալով հռչակաւոր Գուրգէն ընտանիքին և մօր կողմէն Փոկասներու հետ (ճիւղագրութիւնը Schlumberger/ի գործը, էջ 3), նոյնպէս Հայերը սիրաշահող քայլեր առած է:

Իր գահակալութեան (25 Դեկտ. 969) երկրորդ առաւօտն իսկ, հրամայեց որ իր պետութեան բոլոր Հայերը ազատ ըլլան տուրքէ: Այս բացառիկ բարեացակամութիւնը թերեւս կրնայ մեկնուիլ իր Հայ ծնունդով սակայն շատ աւելի հաւանական է մտածել թէ ան կ'ուզէր Հայերը շահիլ(2), որոնք իր բանակին մեծամասնութիւնը կը կազմէին և ամէն ճակատամարտներուն մէջ իրենց քաջութեամբ հրաշքներ կը կատարէին:

---

(1) Բիւզանդական բանակները մեծ մասամբ վարձկաններէ կը բաղկանային: Պարտաւորիչ զինուորագրութիւն և վիճակարկութիւն չի կար: Կայսրերը կը հաստատէին նահանգներու մէջ զինուորական գաղութներ: Զինուորները կ'ստանային երբեմն թոշակի տեղ հող՝ զոր ժառանգութեամբ կը փոխանցէին իրենց զաւակներուն, բայց ժառանգորդները պարտաւոր էին արեան հարկ հատուցանել իրենց գտնուած սահմանագլուխները պաշտպանելով: Այս պարտականութիւնն է որ երբեմն զանց առած են Հայերը, անշուշտ դառնացած:

(2) Շլումպերժէ կը կարծէ թէ Հայկական կամ Արմենեակ թեմի (Thema Arméniacon) բնակիչները հարկերէն ազատած է Զմշկիկ միայն իր գահ բարձրացած տարուան համար. թէև ժամանակագիրները այդ սահմանափակումը չեն յիշեր (L'Epopée Byz. I. էջ 26): Այս շնորհը ըրած է վանքի ըստ ոմանց Հայկական թեմը իր ծննդավայրն եղած էր (Գուրեան, Ազգ. Պատմ. էջ 354) ինչ որ անհաւանական չէ: Հայ պատմիչներն են որ միայն իր ծննդավայրը կը նշանակեն Զմշկածագ աւանը՝ որ կը պատկանէր Միջագետական թեմին (thema Mesopotamia):



Անիկա պարգեւատուութիւններով կը վարձատրէր յաճախ զանոնք, այդ զօրականներուն բնակութեան տեղեր և հողեր տալով այն երկիրներուն մէջ և մանաւանդ 'ի Կիլիկիա և 'ի Սուրիա — որոնք իսլամներէն կը վերցնէր, անոնց շնորհիւ, զէնքով և կը դատարկացնէր իսլամ բնակիչներէն, և անոնց տեղերը կու տար իր զինուորականներուն որոնց մեծամասնութիւնը Հայեր էին:

Զմշկիկ, շահելու համար սիրտը ժողովուրդին, 2–3 տարիներ՝ ի վեր սպառնացող սովի աղէտին դարման տարաւ, ամէն կողմէն առատ ցորեն գնել տալով և աժան գնով բաշխելով:



ԴՐԱՄ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԶՄՇԿԻԿԻ
( 969 – 876 )

Զմշկիկ Հայ էր և լաւ վարուեցաւ Հայոց հետ և Աշոտ Գ. Ողորմածի հետ միշտ բարեկամ մնաց (Շլումպերժէ, L'Epo. Byz. I. էջ 358): Սքլերոս որ անոր մահէն յետոյ այնքան մեծ յուզումներու ենթարկեց երկիրը, կը ներկայանար անոր վրէժը լուծող մը յաջս Հայոց, քանի որ բոլոր աշխարհի առջև Վասիլ Ներքինին ամբաստանուած էր թէ Զմշկիկը թունաւորած էր:

Ներքին խռովութիւններու երկար շրջանին, որուն դերակատարները գլխաւորապէս Հայերն էին և հանդիսավայրը մասնաւորապէս Կապադովկիան՝ (տես վերը, էջ 317-324), կը տեսնենք թէ յափշտակիչները իրենց նեցուկ ունէին ընդդէմ կեդրոնին, Հայերը, որոնք ամէնէն շատ զինուոր տուին Սքլերոսի և ամէնէն առաջ զայն ճանչցան կայսր:

Սկիզբէն և անոր հետեւողութեամբ Կենտրոնոս կը հաստատեն թէ Սքլերոսի կայսր հռչակման ատեն Հայ զինուորներն էին որ տուին առաջին նշանը ուրախութեան և յարգանքի, «Անիկա խիստ բնական էր կ'ըսէ Շլումպերժէ, վասնզի ինչպէս Նիկեփոր Փոկաս եւ Յովհաննէս Զմշկիկ, նոյնպէս Վարդ Սկլերոս ալ Հայ ծագում ունէր» (L'Epopée Byz. I. էջ 358) և հաւանօրէն Կապադովկիա հաստատուած ընտանիքէ մը կը սերէր:

Ասողիկ կ'ըսէ թէ Սքլերոս շահած էր իր կողմը «զինեծեալպղնձն զօրն Հայոց ու ընդ Յունաց բազմաւորութեամբն» (էջ 178) և կը հակադրէ իր պատմութեան մէջ այդ գունդերը գրելով թէ «Վասիլ գումարեաց զզօրսն Բիւզանդիոնի եւ զԹրակացւոց եւ զՄակեդոնացին հանդերձ արեւմտեայ ազգօքն», այսինքն կայսրութեան Եւրոպական ուժերը, որոնք հաւատարիմ մնացած էին: Արդարև Սքլերոսի հեծելազօրքը կը բաղկանար Հայերէ և Վրացիներէ, առաջնորդուած Ափրանիկ Մոկացիէ (տես Ասողիկ, էջ 178) և Գրիգոր(1) Բագարատ և Ռոմանոս(2) Տարոնեցիներէ (Հմմտ. L'Epopée, Byz. I. էջ 362). ամէն անգամ որ ան պէտք ունեցաւ «քաջ եւ զօրաւոր զօրաբաժիններ հանեց Հայաստանէն» (տես, Abbé Albert Vogt, Cambridge Med. Hist. Դ. հատ. էջ 85), և Հայերը խիստ

---

(1) Գրիգոր և Բագարատ որդիներն են Տարօնի իշխան Աշոտի որ Յոյները զրկեցին իշխանութենէ:

(2) Ռոմանոս՝ հօրեղբայրն էր Գրիգորի և Բագարատի:

համակիր ցոյց կու տային ինքզինքնին Սքլերոսի և ընդհակառակը խիստ թշնամի Վասիլ Ներքինիին՝ որ հակառակորդն էր Յովաննէս Չմշկիկի (Schlum. L'Epopée Byz. I. էջ 413)։

Սքլերոսի քաղաքային այն մեծ պատերազմը որ քիչ մնաց Բիւզանդական պետութեան ճակատագիրը պիտի յեղաշրջէր իր էութեան մէջ հայկական շարժում մըն էր, վասնզի իր կուսակիցները և զինուորները իրեն պէս Հայեր էին։ Այս պատճառով՝ այդ տագնապին ատեն Հայ բառը Սքլերոսի կուսակից կը նշանակէր, և Հայերը մասնաւոր ատելութեան առարկայ էին։

Պատմութիւնը որոշապէս կը յիշատակէ թէ Պետրոս Փոկաս և Լեւոն Փոկաս մասնաւորապէս աններող ոգի մը ցոյց տուած են հանդէպ Հայ գերիներուն զանոնք անխնայ սպանելով։

Եւ գիտելի է որ Վարդ Սքլերոսի զինուորները ստուար մեծամասնութեամբ Կապադովկիայէն և Փոքր Հայքէն էին, վասնզի երբ Լեւոն Փոկասէն յետոյ Լեւոն Ներքինի դիկտատորական իրաւասութիւններով Սքլերոսի դէմ ղրկուեցաւ, անիկա Կապադովկիոյ և Փոքր Հայքի հայածին զինուորները պատժելու համար յարձակեցաւ անոնց ծննդավայրներուն վրայ, գիւղեր և քաղաքներ այրեց և ընտանիքներ գերի տարաւ, և այսպէս յուզում և բարոյալքում առաջ բերաւ Սքլերոսի բանակին մէջ։

Վարդ Սքլերոս՝ Լեւոնի դէմ ղրկեց Ռոմանոս Տարոնեցին և Անտիոքի դուքս Պուրծէսը, որոնք թէեւ մտան Կապադովկիա, սակայն չկրցան յաղթել Լեւոնի, որ Պետրոս և Լեւոն Փոկասներուն պէս անխնայ վարուած է հանդէպ Հայ զինուորներու, որոնք երբ ձեռք անցուէին անպատճառ կը ջարդուէին (Հմմտ. L'Epopée Byz. I. էջ 384)։

Միայն Վարդ Փոկաս որ յետոյ Կապադովկեան հայածնունդ ազնուականութեան օժանդակութեամբ ինքն ալ կայսր պիտի հռչակէր ինքզինքը (տես վերը, էջ 321) կը թուի թէ այս ուղղութեան չէ հետեւած այլ աւելի Հայերը սիրաշահելու և թերեւս ասոր կը պարտի մասամբ մը իր յաջողութիւնը։

Առանց այդ մեղմութեան անկարելի էր որ Վարդ Փոկաս կարենար ութ տարի (979–987) իր ձեռքը պահել ասիական զօրքերու սպարապետութիւնը, և յետոյ Հայերու օժանդակութեամբ կայսր հռչակուիլ (987 Օգոս. 15) Կապադովկիոյ մէջ, համախոհութեամբ Հայ կալուածատէր–հողատէրերու որոնց ուժը ընկճելու միջոցներ ձեռք առած էր Վասիլ Բ.։

Վարդ Փոկասի ապստամբութեան ալ Հայերը օժանդակած են և Հայոց համակրութիւնը հայածնունդ այս թագապահանջին ալ կողմը եղած է, ինչպէս տեսնուեցաւ։

Նոյնիսկ իր մահէն (989 Ապրիլ 13) յետոյ իր պայքարը շարունակած են Հայերը։ Իր զաւակը Լեւոն Փոկաս որ Անտիոքի դուքս կարգուած էր իր հօրմէն, երբ Անտիոքցիք չուզեցին իրեն գործակցիլ ամրացաւ քաղաքին վերը շինուած անառիկ բերդին մէջ և իր կոչին վրայ Հայ և Արաբ բախտախնդիրներու բազմութիւն մը՝ միշտ պատրաստ կռուելու ատելի կայսրութեան դէմ, եկան իրեն միացան (Schlumberger, L'Epopée Byzantine II. էջ 28)։

Նոյնպէս իր պայքարը շարունակեցին Դերջանի և Տարոնի Հայերը գլխաւորութեամբ Զորթուանէլի, որ ինքն ալ ապստամբած էր Սքլերոսի և Փոկասի հետ.



Ասոնք ամէնը ցոյց կու տան թէ Կապադովկիոյ հայացած բնակչութիւնը և Արեւելեան նահանգներու բոլոր բնակչութիւնը դէմ էր Վասիլ Բ.ի և իր կրօնական և տնտեսական քաղաքականութեան, և ինչպէս Սքլերոսի նոյնպէս նաեւ Փոկասի ապստամբութիւնը իր խորքին մէջ հայկական էր։

Հայերը, մասնաւորապէս Կապադովկիոյ Հայերը, նեցուկ հանդիսանալով այս ապստամբութիւններուն իրենց դժգոհութիւնը կ'արտայայտէին հանդէպ օրթոտոքսութեան կեդրոնին և անոր հլու կամակատար կայսրերուն, իբր իրենց կրօնական և ցեղային հալածիչներու։

Սակայն անյաջողութեան մատնուեցան, և ընդհակառակը աւելի ատելի դարձան։

Ուստի Վասիլ Բ. և իր յաջորդները աւելի սաստկութեամբ հալածեցին Հայ Եկեղեցին և զայն միացնելու իղձով կուրացած, ամէն մեքենայութիւն ի գործ դրին, անոր պաշտպան հանդիսացող Հայ անկախ և կէս անկախ իշխանութիւնները քայքայելու և այսպէս անխորհրդաբար քանդելու նոյնիսկ Բիւզանդական պետութեան բնական պատնէշները։

Անխորհուրդ և տխմար քաղաքականութիւն, որ որքան Հայոց նոյնքան նաեւ Յունաց համար աղէտաբեր եղաւ։

Հայերու դէմ ատելութիւնը տկարացուց Հայ և Արմենեակ տարրերու բարձր հեղինակութիւնը, և պետութեան վարչութեան մէջ հայերու կարեւոր տեղը գրաւեցին Սլաւները, որոնք ԺԱ. դարէն սկսեալ կայսրութեան մայրաքաղաքին մէջ բռնեցին իբր ազնուական, իբր աւագանի, իբր զինուորական այն տեղերը որոնք Ը. դարէն մինչեւ ԺԱ. դար Հայերու սեփական էին։

Այնպէս որ այլեւս մասնաւորապէս արեւելեան նահանգներու Հայերէն կայսրեր և զօրավարներ չեն յիշատակուիր։

Միայն կը յիշուի Հայ ծագումով և Կապադովկիացի Արկիրոս կամ Արկիւրոպուլոս մեծ կալուածատէր ընտանիքէն ծերակուտական մը՝ որ Ռոմանոս Գ. անունով գահ կը բարձրանայ 1029ին և իր հինգ տարուան իշխանութեան շրջանին ոչինչ կրնայ ընել կայսրութեան փրկութեան համար(1),

Միւս կողմէն Հայոց սրուած ատելութիւնը, այլապէս ճակատա-

(1) Ռոմանոս Գ. հակառակ իր Հայ ծագումին հետեւող մը եղած է Վասիլ Բ.ի և չարաչար հալածած միաբնակ Հայերը և Ասորիները, հակառակ անոր որ Վասիլ Բ. զգալով իր ծանր սխալը, երբ Վրացի Դաւիթ Կուրապաղատին մահը († 1000) լսելով կը փութար Հայաստան, Մելիտինէի մէջ, երբ Սեբաստիոյ Հայ քահանաները անոր ընդ առաջ ելան, կայսրը, հրամայեց Հայոց ազատօրէն «հնչեցուցանել զձայն ժամահարի» զոր արգիլած էր երբեմն Սեբաստիոյ մետրոպոլիտը (Ասողիկ, էջ 268)։ Իրողութիւն՝ որ զուցէ ծնունդ տուած է սա զրոյցին թէ Վասիլ Բ. իր միաբնակ հպատակները սիրաշահելու համար Քաղքեդոնական դաւանութիւնը թողած և Կիլիկիա երթալով Հայ վանքի մը մէջ մկրտուած է (Կիրակոս Գանձակեցի, էջ 50), ինչ որ բնաւ հաւանական չէ։

գըրական հետեւանքներ կ'ունենայ կայսրութեան համար, վասնզի մինչ անոնք հակառակորդի դիրք կը բռնեն Բիւզանդական կայսրութեան հանդէպ, իրենք ալ իրենց կարգին լեցուած կոյր թշնամութեամբ մը։

Միայն սով կրնայ մեկնուիլ Հայ պզտիկ իշխանութիւններու ժխտողականութիւնը 1057ին Իսահակ Կոմնենոսի ապստամբութեան և այն ձեռնտուութիւնը որ Հայերը ընծայեցին Մահմէտականութեան յառաջ Սելջուկներուն։

Եւ տեսանք թէ արդիւնքը ի՞նչ եղաւ։

---

Թ.

# ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՀԱՅ ՃՈՐՏ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## Ա.

### ՀԱՅ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒՆ ԵՐԿԻՐՆԵՐԸ ԵՒ ԿԱԼՈՒԱԾՆԵՐԸ

Տեսանք թէ Նիկեփոր Փոկաս, Յովհաննէս Չմշկիկ և մանաւանդ Վասիլ Բ. ինչ նպատակ կը հետապնդէին Հայերը տեղափոխելով և զանոնք տեղաւորելով Տաւրոսի երկու կողմերը Կապադովկիա և Կիլիկիա, Ասորիք և Եփրատամերձ երկիրներ, և այսպէս լեցնելով հալածուած և վանուած իսլամներու տեղերը։

Վասիլ Բ. քաջալերեց նաեւ Սենեքերիմ Արծրունին, Վասպուրականի թագաւորը որ 400.000 հպատակներով տեղափոխուի Սեբաստիա (1016–1021), ինչպէս կը պատմէ Կեդրենոս ժամանակակից յոյն պատմագիրը (Բ. էջ 464) ըսելով թէ «Սենեքերիմ իշխանն վերին Մարաստանի զոր այժմ Ասփրականիա(1) կը կոչեն, եկաւ առ արքայն իր բոլոր գերդաստանով հանդերձ, տալով անոր՝ իրեն հպատակող բոլոր գաւառը, եւ անուանուեցաւ Պատրիկ եւ զօրավար Կապադովկիոյ եւ փոխարէն իրեն կալուած ընդունեցաւ նշանաւոր քաղաքները, Սեբաստիա, Լարիսա, Աւարա, եւ ուրիշ բազմաթիւ կալուածներ, վանգի ներդուելով մեծաքանակ Հագարացիներէն՝ անկարող դիմադրելու՝ կայսեր դիմեց եւ իրեն տուաւ իր գաւառը. որուն իշխան դրկուելով Վասիլ Պատրիկ Արգիրոս՝ ամէն բանի մէջ անյաջող երեւնալով՝ պաշտօնէն հանուեցաւ, եւ իրեն տեղ դրկուեցաւ զօրավար Նիկեփոր Կոմնենոս, որ այդ գաւառը երթալով՝ մասամբ հանդարտեցնելով, մասամբ բռնութիւն գործածելով, գաւառը կայսեր հպատակեցուց»։

Սենեքերիմ յաջս Հայոց կը նկատուէր իր նոր բնակավայրին մէջ ալ «թագաւոր» մինչ Յոյները զայն կ'անուանէին «պատրիկ եւ զօրավար Կապադովկիոյ» (Կեդրենոս, Բ. էջ 464) կամ «տուէս Մեծագեստաց եւ ստրատիկոս Կապադովկիոյ» (Թէքամենոս, գլ. 245; (Հմմտ. Laurent, Byzance et les Turcs Seldjoucides, էջ 38), ինչ որ աւելի համաձայն էր իր դիրքին քանի որ անիկա կը դառնար ճորտ մը կայսեր, ստանալով իբր կալուած Սեբաստիան և շրջակայքը (տես վերը, էջ 338–339)։

Այս առաջին Հայ ճորտ (vassal) իշխանութիւնը որ կը կազմուէր Կապադովկիոյ մէջ, ինչպէս կը տեսնուի ունէր բաւական տարածութիւն։ Անոր սահմաններուն մէջ էին Սեբաստիան, ինչպէս կը հաստատեն միահամուռ կերպով Կեդրենոս (Բ. էջ 464), Michel Le Syrien (Գ. հտ. էջ 133) օտարներէն և Լաստիվերտցի (էջ 20), Սամուէլ Անեցի (էջ 104) և Սմբատ Գունդստապլ (էջ 45) մեր պատմագիրներէն, որոնք առանց ուրիշ տեղի անուն տալու Սեբաստիոյ վրայ կ'աւելցնեն նաև «շուրջ զնովաւ գաւառք»։

Կեդրենոս (նոյն) Սեբաստիայէն զատ կը յիշատակէ «Լարիսա, Աւարա եւ ուրիշ բազմաթիւ կալուածներ»։ Հայ պատմիչներէն Վարդան պատմագիրն է միայն որ Սեբաստիոյ շրջակայքէն յանուանէ նաև Լառիս քաղաքը (էջ 92), կը յիշէ, համաձայնաբար Կեդրենոսի։

Հայ բանասէր մը՝ որ համեստօրէն պահուած է Կոմմագենացի կեղծ անունին տակ (տես Փիլարտոս Հայր, Հալէպ, 1930, էջ 14–15), Արծրունեանց այս իշխանութեան համար կ'ըսէ թէ «վսանեյի աւանդութիւններ գիտեն որ՝ այդ արեւելեան սահմանը մինչեւ Եփրատ կը հասնէր եւ Տիվրիկ, Ակն եւ Արաբկիր քաղաքներն ալ իր մէջ կը պարունակէր։ Իսկ արեւմուտքէն՝ չէր հասներ մինչեւ Խաւարտանէ անդին՝ Սեբաստիոյ հարաւ-արեւմտեան կողմը» և դուրս թողլով Տեփրիկէն որ Լիկանտոնի թեմին կը պատկանէր (Հմմտ. նաև Ալեքսանդրեան Անդր. վրդ. էջ 140)։

Սակայն հակառակ Ալեքսանդրեան վրդ.ի (նոյն) կարծիքին Կոմմագենացի կը յայտէ թէ «Վարդան թէեւ այն բուակաւին Լառիսը Արծրունեանց տրուած կը համարէ, բայց մենք հաւանական չենք սեպեր այդ հաւաստումը» (Փիլարտոս, էջ 15)։

Իր տեսութեամբ Սենեքերիմ Արծրունիի տէրութիւնը «Հիւսիսէն՝ Պոնտոսէն կը բաժնուէր բնականապէս Պոնտական լեռնաշղթայով (Ջամլըպէլ, Եըլտըզթաշ եւայլն) իսկ հարաւէն Ուզուն Եայլա կը հասնէր» (էջ 15)։

Սակայն դիտելի իրողութիւն մըն է որ Վարդան մինակը չէ որ կը հաւաստէ թէ Լառիսա նաև մաս կը կազմէր Սենեքերիմի տրուած հողերուն, այլ նաև Կեդրենոս, որ Լառիսայէն զատ կը յիշէ նաև Աւարան։

Եթէ Կեդրենոս և Վարդան ժամանակով յետոյ պատահած դէպք մը շփոթութեամբ առաջ չեն տարած(1) այնատեն պէտք է ընդունիլ թէ Լառիսա, ինչպէս նաև Աւարա՝ երկուքն ալ Լիկանտոնի մէջ քաղաքներ, տրուած էին Սենեքերիմի, որուն ճորտ իշխանութիւնը ընդարձակուած է իր Դաւիթ որդւոյն դէպի Վասիլ ցոյց տուած հաւատարմութեան և անձնուիրութեան համար, անոր տրուելով իբր թէ նաև Կեսարիան։

(1) Որոշ է թէ Վասպուրական պէտք է հասկնալ։

(1) Որովհետև Սենեքերիմի որդւոյն՝ Դաւիթի ատեն այս պետութեան սահմանները պիտի ընդարձակուէր — ինչպէս պիտի տեսնուի յետոյ — և այդ նոր առնուած շրջանակին մէջ կրնար ըլլալ Լառիսան, ինչպէս Կոմմագենացի (էջ 15) ալ կ'ընդունի։

Արիստակէս Լաստիվերտցի որ ժամանակով ամենէն մերձաւոր ժամանակագիրն է և իր խիստ յայտարարութեամբ իբր 2-3 տարի առաջ պատահած դէպքեր (էջ 20) կը պատմէ մանրամասն «Ծռավիզն» կոչուած Փոկասի որդւոյն(1) ապստամբութիւնը և Սենեքերիմի որդւոյն Դաւիթի պահ մը անոր գործակցիլը, և ապա սխալելով զայն սպաննելը և գլուխը կայսեր ղրկելը (Լաստիվերցի, Թիֆլիս, 1912, էջ 18-21), երբեք այս առթիւ Վասիլի կողմէ եղած վարձատրութեան մը խօսքը չ'ըներ(2), մինչ ժամանակով դար մը յետոյ ապրող՝ Մատթէոս Ուռհայեցի (Բ. տպ. 1898, էջ 51) և անոր հետեւող Սմբատ Գունդստապլ (էջ 58) այս առթիւ Վասիլ տուաւ կ'ըսեն «օժիտ Դաւթի զԿԵՍԱՐԻԱ և զԾԱՄՆԴԱՒ և զԽԱՒԱՐՏԱՆԷՔ հանդերձ սահմանօքն», մինչ Վարդան (էջ 92) որ դար մը աւելի ուշ (ԺԳ. դար) գիրի առած է իր պատմութիւնը միայն «առ որով զԽԱՒԱՐՏԱՆԷՍՆ» կ'ըսէ:

Ո՞րն է ճիշդը այս երեք իրարմէ տարբեր տեղեկութիւններուն, կարելի չէ վճռել, միայն կարելի է ըսել թէ որոշ չափով ընդարձակուած էր Սենեքերիմի պետութիւնը երբ ան մեռաւ (1025) և «հաստատեալ լինէր թագաւորական իշխանութիւն տանն Հայոց յաւագ որդին իւր ի Դաւիթ, վասնզի էր այր փառաւոր եւ պատուական եւ ահարկու ի վերայ երկրի» (Ուռհայեցի, էջ 62): Դաւիթ (1025-1035 կամ 1027-1037) անշուշտ պահեց իր հօրենական կալուածները, ինչպէս նաև այն հողերը որ ստացած էր իր անձին համար ի վարձատրութիւն:

Երբ Դաւիթ մեռաւ Կեսարիա, Ծամնդաւ և Խաւարտանէք վերստին Բիւզանդական կայսրութեան դարձուեցան, եկամուտները Դաւիթի այրիին յատկացուելու պայմանով (Կոմմագենացի, Փիլարտոս Հայ, էջ 15)(3):

Հետեւաբար Դաւիթի իր քաջութեան ի վարձ ստացած կալուածները՝ անձնական սեփականութիւն կը նկատուէին և իր մահէն յետոյ փոխանցուեցան իր կնոջ և կազմեցին առանձին ճորտական ստացուածք մը, իսկ Սենեքերիմի սեփական կալուածները, Սեբաստիա, Լարիսա և Աւարա, բացի Լարիսայէն որ 1065ին Կարսի Գագիկ թագաւորին տրուեցաւ, ժառանգեցին իր միւս երկու որդիները(4) Ատոմ

(1) Ինչպէս տեսնուեցաւ (էջ 410) Վարդ Փոկասի մէկ ուրիշ զաւակը Լեւոն Փոկաս իր հօրը մահէն յետոյ ինչպէս որ Անտիոքի մէջ ամրացած և Հայերու գործակցութեան ապաւինած էր, նոյնպէս նաև այս զաւակը Հայաստանի մէջ, պէտք է ապստամբած ըլլայ, սակայն ինչպէս կ'երեւայ ըստ Լաստիվերտցիի իր և իր գործակիցներուն ձեռնարկը «ոչ ինչ յերկարեցաւ նոցա մանկական խաղուն առարուած, եւ կամ ի վերայ աւազոյ շինուած, որ ի բախել հեղեղացն վաղվաղակի անկեալ կործանեցաւ»:

(2) Թէև լռելեան կը հաստատէ այսպիսի բան մը (էջ 62) անոր բաժին մը ունենալուն խօսքը ընելով:

(3) Դժբախտաբար այս տեղեկութեան աղբիւրը անծանօթ է կամ փոյթ չէ ունեցած նշանակելու, ինչ որ չափազանց կարեւոր էր:

(4) Դիտելի է որ Ուռհայեցի (էջ 74) միայն Ատոմը կը յիշատակէ, ըսելով թէ «մեռանէր արքայն Դաւիթ որդի Սենեքերիմայ արքային Հայոց եւ տայ զիշխանութիւն հայրենեաց իւրոց ի յեղբայր իւր Ատոմ, որ էր լցեալ Ատոմ առաքինութեամբ եւ արդարութեամբ եւ սուրբ վարուք... լցեալ հեզութեամբ եւ քաղցրութեամբ, ողորմած ի վերայ տառապելոց, դարմանիչ աղքատաց եւ յոյժ սիրելի կրօնաւորական դասուն եւ շինող եկեղեցւոյ եւ բազմացուցիչ վանորայց»:



և Աբուսահլ (1035-1079) որոնք գործակցաբար և միասին կը վարէին իրենց իշխանութիւնը, միշտ իրենց իշխանութեան տակ ունենալով Սեբաստիան և Խաւարտանէքը որոնցմէ դուրս ուրիշ քաղաքի անուան յիշատակութեան չենք հանդիպիր մեր պատմագիրներուն մօտ, գիտնալու համար թէ իրենց ճորտական իշխանութիւնը ինչ ծաւալ ունէր:

Ասոնց իշխանութեան շրջանին է որ Յոյները վերջ կու տան Բագրատունեանց թագաւորութեան՝ Գագիկը նենգութեամբ տեղափոխելով Կ. Պոլիս (1044) և ապա միայն արտօնելով որ տիրանար Դաւիթի բաժինին ամուսնանալով անոր աղջկան(1) հետ:

Գագիկ վերջին Անիի թագաւորին, 'ի փոխարէն իր թագաւորութեան, տրուած էր Մագիստրոսի տիտղոս եւ թոշակ, Կ. Պոլսոյ մէջ պալատ մը, հողեր Կապադովկիոյ, Ղարսիանի և Լիկանտոնի, Կալոնպաղատի և Պիզուի մէջ(2) (Կեդրենոս, Բ. 559. Schlumberger, L'Epo. Գ. հտ. էջ 489. Chalandon, Les Comnènes II. Jean II. Comnène et Manuel I' Comnène, Paris, 1912, էջ 489, J. Laureut, Byzance et les Turcs, էջ 20 և 38):

Իսկ հետաքրքրական է մեր հայ պատմագիրներուն այս մասին ըսածները:

Լաստիվերտցին, որ ժամանակակից մըն է, կը պատմէ թէ Բիւզանդիոնի կայսրը առաջարկած է Գագիկի տալ իրեն Անին, անոր խոստանալով «փոխանակաւ զՄելիտինէ եւ զգաւառսն որ շուրջ զնովաւ»: Սակայն Գագիկ «ոչ առնու յանձն» (էջ 61):

Յետոյ երբ Յոյները «տիրեցին Անւոյ եւ ամենայն աշխարհին» (էջ 62) «Գագիկ աներախտի մնաց առ թագաւորն, յորում առ մարդասիրութեան տուեալ նմա տեղիս, զոր ինքն կամեցաւ» (էջ 62):

Ուրեմն Լաստիվերտցի կ'անգիտանայ ինչ որ յանուն մարդասիրութեան կամ իբր ողորմութիւն տրուած է:

Ըստ Ուռհայեցիի «տայր Մոնոմախին Գագկայ զԿալօնպեղատն եւ զՊիզու» (էջ 111), ինչ որ մասամբ կը համաձայնի Կեդրենոսի հետ:

Իսկ Թովմա Արծրունիի շարունակողը (էջ 346) ոչ մէկ յիշատակութիւն կ'ընէ կալուածական ստացութեան այլ միայն կ'ըսէ թէ «Բագրատունին Գագիկ որդի Յովհաննիսի արքայի, եւ նա եւս փոխեալ զհայրենիսն իւր ի նոյն թուաբերութեանն Ն.Պ. (=1041) եւ չոգաւ ի Հոռոմս»:

Իսկ Վահրամ Րաբունի (էջ 190-191) բոլորովին տարբեր այս միւսներէն, կ'ըսէ թէ.—

«Նաեւ Հայոց՝ արքայն օծեալ
Այն որ Գագիկն՝ է կոչեցեալ.

(1) Կոմմագենացի այրիին հետ ըսած է, բայց սխալ է. Լաստիվերտցի բացորոշ գրած է «Գագիկ հրամանաւ թագաւորին առնու իւր կին զդուստր Դաւթի որդւոյ Սենեքերիմայ, եւ տիրէ նորին բաժնին, քանզի Դաւիթ վախճանեցաւ չունելով այլ զաւակ ժառանգաւոր» (տպ. 1912, Թիֆլիս, էջ 62):

(2) Չամիչեան (տես Բ. հտ. էջ 935) «ես նմա փոխարէն, կ'ըսէ, զքաղաք մի՝ որ կոչիւր Պիզու եւ զայլ կալուածս ի կողմանս Կապադովկիոյ, Խարձենայ եւ Լիկանտիոյ ըստ Կեսարենոսի եւ պալատ մի մեծ 'ի Կոստանդինուպոլիս քաղաքի, կարգեալ նմա եւ ռոճիկս»: Ղարսիան եղած է Խարձեն չեմ գիտեր ինչպէս:

Յայնժամ չարիսըն՝ նայեցեալ
Եւ զհանդերձեալըն՝ ընկալեալ:
Ըզ բոլոր աշխարհն՝ որոց տիրեալ,
Ի Հոռոմոց՝ կայսրն տուեալ,
Եւ փոխարէն՝ ինքեան առեալ,
Զկեսարիայն՝ ըզնո չակեալ:
Այլ եւ բազում՝ տեղեաց տիրեալ,
Կապադովկիոյ՝ մասինն եղեալ,
Յորում Հայոց՝ ազգի բնակեալ,
Ի մէջ Յունաց՝ պանդխտեալ»:

*Ուրեմն անիկա Կեսարիա քաղաքը և Կապադովկիոյ հայաբնակ վայրերէն տեղեր Գագիկի տրուած կը համարէ։*

*Լաստիվերտցի այս փոխանակութեան մէջ անիրաւուած կը համարէ Գագիկ թագաւորը վասնզի Յունաց թագաւորին* «առ մարդասիրութեան տուեալ» *տեղերը* «յոյժ պակաս էր ըստ արժէիցն Անւոյ եւ այլ աշխարհին» *կ'ըսէ (տես էջ* 62)։

*Գագիկ անշուշտ այս տեղափոխութենէն յետոյ է որ կ'ամուսնանար Դաւիթ Արծրունիի աղջկան հետ* «հրամանաւ թագաւորին» *Յունաց և* «տիրէ նորին բաժնին» (*Լաստիվերտցի, էջ* 62) *որուն ինչ ըլլալը ինչպէս տեսնուեցաւ չէր ըսած։*

*Անիկա ըստ Սմբատի և Ուռհայեցիի կը գտնուէր* Կեսարիա, Ծամընդաւ *և* Խաւարտանէք *քաղաքներուն և ըստ Վարդանի՝ միայն* Խաւարտանէքի *շուրջը, ուրեմն Գագիկի իշխանութեան կ'ենթարկուէին նաև այս քաղաքները, որոնք կը պատկանէին Դաւիթի աղջկան։*

*Հետևաբար հարկ կ'ըլլայ ընդունիլ թէ այս հինգ յիշատակեալ վայրերը միևնոյն շրջանակին պատկանելով Գագիկի ճորտական իշխանութեան մէջ կը գտնուէին։*

*Կեդրենոսի խօսքերը ուր յայտնի կը յիշուի Պիզուն, Կապադովկիոյ, Խարսիանի և Լիկանդիոյ մէջ կալուածներով, երբեք չի հակասեր ասոր և նոյնիսկ իրաւունք կուտայ Կոմմագենացիի ըսելու թէ* «օտար վստահելի աղբիւրներէ գիտենք որ *Կիւրին, Աշոտի, Տարենտէ* քաղաքները այս օրեր Գագիկի սահմաններուն մէջն էին (Murray's Handbook of Asia Minor, 260–1): Բայց կ'երեւի թէ վերջէն կրճատուած են այդ սահմանները, մանաւանդ արեւելեան կողմէն: *Պիզու* էր Գագիկի մնայուն ոստանը՝ մեծակայ *Կալոնպալատ* դղեակով: *Կեսարիան* ալ միշտ Գագիկի ստացուածքը եղած կ'երեւի, ինչպէս նաեւ Խաւարտանէք ամրոցը» (*տես Փիլարտոս, էջ* 15)։

*Արդարև* Կալոնպաղասը *իբր բնակավայր Գագիկի կը յիշէ Ուռհայեցի* (*էջ* 193-194) *և* Պիզուն *կը համարէ* «քաղաքն իւր» *ուր ունէր* «վանքն իւր», *հոն ուր յետոյ թաղուեցաւ* (*էջ* 265) *և ինչպէս իր խօսքերէն կը հետևի* «Գամրաց աշխարհին» *այսինքն Կապադովկիոյ մէջ էին իր հողերը և մօտ Տաւրոսեան լեռներուն* (*Ուռհայեցի, էջ* 263 *և* 397)։

*Սակայն Լեսարիոյ մասին բացի Վահրամ Րաբունիի կասկածելի հաւաստումէն ոչ մէկ տեղ յիշատակութիւն կայ։*

*Իսկ Ծամնդաւի իր իշխանութեան տակ մնացած ըլլալը ոչ մէկ տեղ յիշուած է։*

*Արդարև* Ծամնդաւ, Կեսարիա *և* Խաւարտանէք *որոնք կը գտնուէին ըստ Սմբատի՝ Դաւիթ Արծրունիի նուէր տրուած բաժինին մէջ, յետոյ*

1065ին կը տեսնենք թէ տրուած են Կարսի Գագիկ Աբասեան թագաւորին։ Հետեւաբար կա՛մ պէտք է խորհիլ թէ Դաւիթի աղջկան հետ ամուսնանալով Գագիկի անոր ստացուածք այս երեք քաղաքներուն տիրանալը առասպել է, կա՛մ Գագիկ Բագրատունիի՝ Դաւիթի աղջկան հետ ամուսնութեամբ անոր ստացուածք երեք քաղաքներուն տիրանալու ձեռնարկը Յունաց կողմէ չէ ընդունուած — ինչ որ շատ հաւանական է — և այսպէս Գագիկ Բագրատունիի երբեք չեն տրուած Ծամնդաւ, Կեսարիա և Խաւարտանէք երեք քաղաքները, որ ինչպէս կը թուի, Դաւիթի մահէն յետոյ, անոր տրուած իբր բացառիկ նուէր, ետ առնուած են և շնորհուած Գագիկ Աբասեանին, որ երբ Ալփասլան Անին գրաւեց (1065 Օգոստ. 15ին) և մինչև Եփրատ առաջացաւ, իր տէրութիւնը տուաւ Յունաց և փոխարէնը՝ առաւ Ծամնդաւը (ըստ Ուռհայեցիի, էջ 181), նաև Կեսարիան և Խաւարտանէքը (ըստ Սմբատի, էջ 78), կա՛մ Ծամնդաւի հետ Լառիսան, Ամասիան և Կոմանան (ըստ Վարդանի, էջ 102)։

Արդէն քիչ առաջ լուսաբանել ջանացի այն հակասութիւնները որոնք այս նոր Հօրտութեան յատկացուած երկիրներուն համար կը ծագէր, քանի որ Ծամնդաւ, Կեսարիա և Խաւարտանէք նախապէս Դաւիթ Արծրունիի և ապա անոր աղջկան ամուսնութեամբ՝ Գագիկ Բագրատունիի հետ՝ իբր թէ անոր փոխանցուած էին, այլ սակայն Բիւզանդացւոց կողմէ յափշտակուած էին հաւանօրէն և տրուած Գագիկ Աբասեանի, որուն տրուած էին նաև ըստ Վարդանի Լառիսա, Ամասիա և Կոմանա:

Հոս աւելորդ չըլլայ ըսել թէ Վարդանի կողմէ Գագիկ Աբասեանի շնորհուած երկիրներուն տեղագրական դասաւորումը ամէն հաւանականութենէ դուրս կը կացուցանէ տրուած տեղեկութեան վաւերականութիւնը, վասնզի աշխարհագրական անյարմարութիւններ կան, որոնք բացարձակ արգելք կ'ըլլան ընդունելու ինչ որ Վարդան կը հաստատէ մեզի։

Կոմմագենացի (Փիլարտոս, էջ 15–16) կ'զգայ այդ դժուարութիւնը և Գագիկ Աբասեանի տէրութիւնը սապէս կը սահմանէ։

«1065ին Գագիկ Աբասեան՝ Կարսի փոխարէն Ծամնդաւ (այժմ Ազիզիյէ) «եւ Լառիս քաղաքները ստացաւ: Վարդան (էջ 102) կը յիշէ թէ՝ Ամասիա եւ «Կոմանա (Պոնտոսի) քաղաքներն ալ այս Գագիկին տրուած էին, բայց սակայն, «ինչպէս նաեւ Սմբատի (էջ 78) աւանդելը թէ Կեսարիա եւ Խաւարտանէք ալ «անոր կը պատկանէին, քիչ մը չափազանցութիւն կը թուի մեզի»:

Բոլոր այս ըսուածներէն կը հետեւի միայն մէկ իրողութիւն յըստակ ու պայծառ, որ է Կապադովկիոյ մէջ գոյութիւնը երեք Հայ իշխանութիւններու, իրարու մօտաւոր, եթէ ոչ իրարու կից ու դրացի, իրենց շրջանակին մէջ ունենալով հետեւեալ քաղաքները, ըստ պատմագիրներու յիշատակութեան, Սեբաստիա, Տիվրիկ, Ակն, Արաբկիր, Կեսարիա, Կիւրին, Առոտի, Տարէնտէ, Ամասիա, որոնք այսօր ալ նոյն անուններով քաղաքներ են, ուստի անոնց տեղերը ճշդելու պէտք չկայ, իսկ Լարիսա, Աւարա, Խաւարտանէք, Ծամնդաւ, Պիզու, Կալոնպաղաս, Կոմանա կը կարօտին տեղագրական ճշդումներու, որպէսզի կարելի ըլլայ հասկնալ անոնց տեղը և Կապադովկիոյ մէջ գոյութիւն ունեցող Հայ թագաւորութեանց սահմանները։

Ուստի առանձին առանձին ցոյց պիտի տամ, այս վերջիններու

մասին կատարուած հնչումները որոնք թերեւս կը տարբերին մինչեւ հիմա ընդունուած տեսութիւններէն։ Բայց նախ կ'ուզեմ համադրել պատկերի մը մէջ իւրաքանչիւր իշխանութեան քաղաքները։

Ա.— ԱՐԾՐՈՒՆԻՔ

Ստացութիւն 1016-1021ին — վերջ 1079ին։

1. Սեբաստիա(1) (2) (3) (4) (5) (8) (10)
2. Լարիսա(1) (6)
3. Աւարա(1)
4. Տիվրիկ } (Աւանդութեամբ)
5. Ակն } (Աւանդութեամբ)
6. Արաբկիր } (Աւանդութեամբ)
7. Ծամնդաւ(10)

Բ.— ԴԱՒԻԹ ԱՐԾՐՈՒՆԻԻ ՏՐՈՒԱԾ «ՕԺԻՏ»

Ստացութիւն 1025ին — ետ առնուած 1035ին։

1. Խաւարտանէք ամրոց(4) (6) (8)
2. Կեսարիա(4) (8)
3. Ծամնդաւ(4) (8)

Գ.— ԳԱԳԻԿ ԲԱԳՐԱՏՈՒՆԻԻ ԿԱԼՈՒԱԾ

Ստացութիւն 1045ին — վերջ 1079ին։

1. Խաւարտանէք
2. Պիզու(1) (4) (8)
3. Կալոնպաղատ(4) (8)
4. Կիւրին } (Աւանդութեամբ)
5. Աշօտի } (Աւանդութեամբ)
6. Տարէնտէ } (Աւանդութեամբ)
7. Կեսարիա(9) } (կասկածելի)
8. Ծամնդաւ } (կասկածելի)

Դ.— ԳԱԳԻԿ ԱԲԱՍԵԱՆԻ ԿԱԼՈՒԱԾ

Ստացութիւն 1065 Նոյեմբերին — վերջ 1079ին։

1. Ծամնդաւ(4) (6) (8) (11)
2. Կեսարիա(8)
3. Խաւարտանէք(8)
4. Լարիսա(6)
5. Ամասիա(6)
6. Կոմանա(6)

---

(1) Ցանուանէ կը յիշատակէ Կենտրենոս։
(2) Լաստիվերտցի (ԺԱ. դար) կը յիշէ։
(3) Միքայէլ Ասորին յիշուած։
(4) Ուռհայեցի (ԺԲ. դար) կը յիշէ։
(5) Սամուէլ Անեցիէ (ԺԲ. դար) յիշատակուած։
(6) Վարդան վարդապետէ (ԺԳ. դար) յիշուած։
(7) Կիրակոս Գանձակեցիէ (ԺԳ. դար) յիշուած։
(8) Սմբատ Գունդստապլէ (ԺԳ. դար) յիշուած։
(9) Վահրամ Րաբունիէ (ԺԴ. դար) յիշուած։
(10) Ցայսմաւուրք։
(11) Շնորհալի։



1. ԼԱՐԻՍԱ.— Murray's Handbook of Asia Minor (էջ 267-8) զայն կը նոյնացնէ Larisa-Herpaի հետ որ կը գտնուէր արդի Եերէկէչէն գիւղին մօտ, Ազիզիյէէն 15 մղոն դէպի հարաւ-արեւմուտք՝ Զամանթի Սուի աջ ափին վրայ։

J. Laurent՝ Լարիսան կը նոյնացնէ Արիարաթիայի հետ, Կապադովկեան ծանօթ քաղաք, որ արդի Ազիզիյէն է (L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 389)։

Անդրէաս վարդ. Ալեքսանդրեան (տես Պատմ. Սեբաստիոյ, էջ 155) Լարիսը կը նոյնացնէ Ուզուն Եայլայի մէջ գտնուող այժմ Վիրան Շէհիր կոչուած վայրին հետ, առանց որոշ տուեալի մը կամ պատմական փաստարկութեան։

Ramsay իր հոյակապ գործին մէջ (էջ 49 և տես վերը էջ 213) չի ճշդեր որոշ դիրքը այս քաղաքին այլ միայն կը դնէ Կեսարիայէն Մալաթիա տանող ճամբուն վրայ։ Անիկա կը հաւաստէ թէ տակաւին հիմա ճամբայ մը կայ բաւական կարեւոր ուրկէ կառքեր կրնան անցնիլ։ Այդ ճամբան կը կտրէ Անտիտաւրոսը, Զամանթի Սուի և Քէօյերիի միջեւ, Եէտի Օլուգ ըսուած կիրճէն, որ միեւնոյն ժամանակ անցքն է Ազիզիէն (=Արիարաթիան) Սարոսի հովիտին կապող։ Այս ճամբան ունի շարունակութիւն մը ուղղակի Թանիր և Արաբիսոն, որ դժուար գործածելի է կառքերու համար։ Ըստ Ռամսէյի անիկա հաւանաբար այն առեւտրական ուղին էր որ Ստրաբոն կը նկարագրէր, ուղղուած Հեռպայէն Փառամալիսի վրայօք, Եփրատէն դէպի Տոմիսա, որ ըստ Քիբերտի անտարակոյս Մալաթիոյ արեւելքն էր (տես Ramsay, The Historical Geography of Asia Minor, էջ 271)։

Ռամսէյ կը խորհի թէ այս ճամբուն վրայ պիտի ըլլայ Լարիսան սակայն կը վարանի անոր տեղը ճշդել և ինչպէս կը տեսնուի բնաւ համաձայն չէ Լորանի հետ Արիարաթիա քաղաքին հետ նոյնացնելու համար Լարիսան վասնզի անիկա նոյնացուցած է Ծամնդաւը Արիարաթիայի հետ, ինչպէս պիտի տեսնուի յետոյ։ Իր տեսութիւնը կը հիմնաւորէ անիկա հնութենէն հասած վաւերագիրներու վրայ, որոնց մէջ նշանաւոր է Ռոմանոս կայսեր 1067ի արշաւանքին նկարագրութիւնը Միքայէլ Ատալիոտայի (էջ 123) որ կ'ըսէ թէ կայսրը Կ. Պոլիսէն ելլելով Լարիսա եկաւ Կեսարիայէն անցնելով և յետոյ աւելի առաջանալով բանակեցաւ Մելետինէէն քիչ մը հեռու տեղ մը։ Ուրեմն անիկա կը գտնուէր Կեսարիայէն Մելետինէ տանող ճամբուն վրայ, ոչ շատ արեւելք Արոաքայէն և հաւանաբար Հեռպայի մօտ, Կարմալոս գետին վրայ(1) (Ramsay, նոյն, էջ 272)։ Եւ որովհետև Հռոմէացիք կը գործածէին թէ՛ Գուրուչայի և թէ՛ Եէտի Օլուգի ճամբաները, կրնայ ըլլալ որ Լարիսա եղած ըլլար առաջինին վրայ և Հեռպան երկրորդին վրայ (նոյն)։

Դիտելի իրողութիւն մըն է թէ Լարիսա անունով բազմաթիւ քաղաքներ կան, ինչպէս հատ մը Իզմիրի շուրջ Մենէմէնի մօտ (Ramsay, նոյն, էջ 109) և ուրիշ մը Պալքանեան թերակղզիին մէջ, ուստի կը

---

(1) Կարմալոս ըստ Ramsayի Սամանթի Սուն էր իսկ ըստ Ռուգէի Քուրմամ Սուն (տես վերը, էջ 213 և 217)։

տարուծիմ մտածել թէ արդեօք այլուր պէ՞տք է փնտռել այս քաղաքը, աւելի մօտ Սեբաստիոյ։

Ըստ St. Martinի (Ա. էջ 185–197), Հ. Քաջունիի (Աշխ. Հին եւ Նոր Հայաստանեայց) և Լէօյի (Հայ Հայրենիք) Լարիսա կը գտնուէր Բ. Հայոց մէջ և 536ի Յուստինիանոսի բաժանմանց ատեն դասուած է Գ. Հայոց մէջ (Laurent, «L'Arménie entre Byzance et l'Islam», 1919, էջ 301)։ Հետեւաբար պէտք էր գտնուեր Մելետինէի, Արկայի, Արաբիսոնի, Արիարաթիայի, Կոմանայի և Կոկիսոնի շրջանակին մէջ, վասնզի այս շրջանը նախկին Բ. Հայքն էր, որ Յուստինիանոս Գ. Հայքի վերածեց։

Լարիսա յաճախ յիշատակուած է իբր վաշտի (Turma) կեդրոն, որ ծագումով կը պատկանէր Կապադովկեան թեմին, բայց Լեւոն Զ.ի կողմէն 890ին փոխանցուեցաւ Սեբաստիոյ թեմին (Ramsay, նոյն, էջ 272)։

Ժ. դարուն (986 թուական) արդէն Լարիսա հայաբնակ քաղաք մըն էր և աթոռ Հայ եպիսկոպոսութեան մը (Ստեփանոս Ասողիկ, 1859, էջ 189)։ Ըստ J. Laurentի («Byzance et les Turcs Seldjoucides», էջ 29) Լառիսա կը գտնուէր Լիկանտոսի թեմին մէջ, որ ամենահին ժամանակներէ սկսեալ լեցուն էր Հայերով։ Անոնք միջին դարուն բացարձակ տէրը դարձած էին այս երկրին, որ կը գտնուէր Մելետինէի և Տիվրիկի միջև։ Հոն հաւաքուած էին 711–713ին կայսրութենէն վտարուած Հայերը (Ապուլֆարաճ, Սուրիական Քրոնիկ, էջ 121 և Michel le Syrien, էջ 482)։ Ան կեդրոնավայրերէն մին էր մեծամասնաբար Հայերէ բաղկացած Պաւղիկեան աղանդաւորներուն որոնց յաղթեց Վասիլ Ա. և ղանոնք ջարդեց կամ տարաւ հեռու իրենց լեռներէն։ Բայց իրենց շարքերը շուտով լեցուեցան այս անբնակ դարձած երկրին մէջ անոնցմով և անոր շուրջը և անոնց դէմ կատարուած պատերազմներու պատճառով։ Այս ապստամբներուն համար խտէալ որջ մըն էր այս երկիրը։ Հոն անոնք կրնային ապրիլ դիւրութեամբ, վասնզի կը պարունակէր բազմաթիւ արօտատեղիներ, իրենց սնունդին յատուկ հօտերուն և զիրենք կրելու սահմանուած ձիերուն համար։




ԿՆԻՔ ԳԷՈՐԳ ՄԼԵՀԻ
(Բարիզի թանգարանը պահուած)

Անոնք յանձին Հայ Մլեհին († 933) գտած էին հոն վստահելի պետ մը, որ «ճարտար եւ վարժ էր աւազակութեան» ինչպէս կ'ըսէ Կոստանդին Ծիրանածին (Թեմ. էջ 33)։ Հայերը շուտով գրաւեցին Լիկանտոսի բլուրը և դրացի քանի մը կատարները։ Անոր հոն շինած ամուր բերդերէն, իր գունդը, արագօրէն սուրալ, գրաւեց բոլոր այս երկիրը, և յարձակեցաւ նաև դրացի Արաբ էմիրներու վրայ, որոնց պատճառեց «մեծ աւերներ եւ վնասներ» (Kodama, էջ 194)։ Բիւզանդիոնի կայսրը զայն առաւ իր պաշտպանութեան տակ, այս աւազակներուն երկիրները վերածեց պաշտօնական թեմի մը և իրենց պետը անուանեց ստրատեգոս նոր կառավարութեան (Կոստ. Ծիր. Թեմ. էջ 33, 35, Վարչ. էջ 228, Schlumberger «Sig.» էջ 273, Գելցեր, M. Abh. 71, էջ 562),



իր իշխանութեան ենթարկուած պէտք է ըլլայ յետոյ Մամեստիա, ինչպէս իր կնիքին յունարէն արձանագրութենէն կը հասկցուի, քանի որ հոն կը կարդանք «Գէորգ Մլեհ Պռոտոսպաթար եւ արքունի զօրավար Մամեստիոյ, Անազարբայ ու Տամանդեայ»։ (Սիսուան, էջ 531)

Այս երկրին մէջ, Լիկանտոս, Ծամնդաւ, Լարիսա և Սիմփոսիոն (Symposion), արդէն Հայերէն բնակուած և գաղթաւորուած էին սկսեալ Մլեհի օրերէն (Laurent, Byzance et les Turcs, էջ 68)։

Հայ եպիսկոպոսի մը գոյութիւնը Լարիսայի մէջ, Ժ. դարուն, արդէն անժխտելի փաստն է անոր հայաբնակութեան։

Ինչպէս արդէն ըսուեցաւ այս քաղաքը 1021ին տրուած է Վասպուրականի Սենեքերիմ թագաւորին և 1065ին Կարսի Գագիկ թագաւորին։

1155–1156 թուականներուն այս քաղաքը իբր բերդաքաղաք կը յիշատակէ Գրիգոր երէց (Ուռհ. էջ 518) որ կ'ըսէ թէ Դանիշմանդեանց տունէն Եաղուպ Ասլան «զօրաժողով արարեալ զբազմութիւն հեծելոց, եկն յերկիրն Լիկանդոնին, եւ առեալ զքրիստոնեայս յերկիր իւր, եւ զանունն ԼԱՌԻՍ եւ զայն եւս էառ»։ Ասով կը հաստատուի կերպով մը թէ Լառիս կը գտնուէր Լիկանտոնին մէջ կամ անոր շատ մօտ և բերդ մըն էր։

2. ԱՎԱՐԱ կամ ԱՒԱՐԱ.— Այս քաղաքը J. Laurent կը յիշատակէ լատին տառադարձութեամբ Abara(1) (տես Byzance et les Turcs, էջ 17 և 38 և գիրքին կից քարտէսը, ինչպէս նաև L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 251 և 257 և անոր կից քարտէսը։ — Այս երկրորդ գիրքին մէջ Abara կամ Amara կ'ուղղագրէ)։

Նոյնիսկ ճշդած է անոր տեղը, Եփրատի օժանդակ Թօքմա-Սուի մէջ թափող Պալըզըլը-Սուի անոր միացած տեղւոյն վրայ(2)։ Կը գտնուէր իբր թէ Սեբաստիոյ հարաւակողմը Թօմարզայէն Տիվրիկ քաշուած գիծի մը կէսին վրայ, մօտերը արդի Կիւրիւնի և Մանճըլըգի, աւելի վերջինին մօտերը։

Ռամսէյ զայն չի ճանչնար Abara ձեւով, այլ անգամ մը միայն կը յիշատակէ (էջ 342) Ամարա (Amara), առնելով Թէոփանէս Շարայարեալէն (267, 278) և Կեդրենոսէն (էջ 154, 207), որոնք իբր Պաւղիկեան քաղաք մը կը յիշեն զայն Տիվրիկի, Արակուսի, ինչպէս նաև Լօքանայի և Թոռասի կամ Թարասի հետ։

Այս քաղաքը կոչուած է նաեւ Լաբար (Lapar) կամ Լաբարա (Lapara) վասնզի ինչպէս Schlumberger (L'Epopée Byz. էջ 371) կը հաստատէ Լիկանտոս քաղաքը կը կոչուէր նաեւ Լաբար։ Հետեւաբար Աւարա = Աբարա = Լաբար = Լիկանտոս կ'ըլլայ։ Լիկանտոս՝ քաղաքին յունարէն կոչումն էր։ Ramsay' (նոյն, էջ 291) ինքն ալ կը հաստատէ այս նոյնութիւնը։ Լաբարա նշանակուած է իբր 3 օրուան ճամբայ կե-

(1) Աւելորդ է ըսել թէ շատ հասկնալի է այս տառադարձութիւնը։ Abaraն պէտք է գրել, Աբարա կամ Ավարա, զի բ և վ լծորդ են (Բարսեղ և Վասիլ)։ Սակայն նկատելով որ երկու ձայնաւորներու միջև, մանաւանդ աէն յետոյ վ չի կրնար գրուիլ, գրուած է նաև Աւարա ձեւով։

(2) A. A. Vasilief (Byzance et les Arabes, Պետերսպուրկ, 1900–1902, Բ. հտ. էջ 30) կը հաստատէ թէ Ապարա հիմնուած է Պալըզըլը Սուի հովիտին վերին մասերուն մէջ։

սարիայէն և Կապադովկիոյ մէջ (Նոյն), արդ Կոմանա եւս երեք օրուան ճամբայ ըլլալով, պէտք է անոր մօտ ըլլայ Լարարա = Լիկանտոս (Նոյն)։

Լեւոն Սարկաւագ գիտէ թէ Լարարա Հայաստանի սահմանագլուխին վրայ էր (Նոյն, էջ 291)։

Վարդ Սքլերոս 976ին Լարարայի յաղթանակէն յետոյ անմիջապէս առաջացաւ դէպի Ծամնդաւ։ Իր նկարագրութիւնը կը պատշաճի տեղւոյ մը որ պէտք է մօտը ըլլայ Կոմանայի, ինչպէս է Լարարա, և Ծամնդաւի նոյնացումը Ազիզիյէի հետ հրաշալի կերպով կը յարմարի (Նոյն, էջ 291)։

Դիտելի է որ 976ին անոր Բիւզանդական ստացուածքներու մէջ ըլլալը կը հաստատուի, մինչ շատ անհաւանական է որ Կոմմագէնէի որեւէ մէկ մասը այդ ժամանակներուն Բիւզանդական իշխանութեան տակ գտնուած ըլլար (Նոյն), ուստի քիչ շատ անոր տեղը կը ճշդուի։

Լարառա ըստ Ռամսէյի (Նոյն, էջ 291) նկարագրուած է հարուստ երկիր մը, ինչ որ կը յարմարի Սարոսի վերին հովիտին։

Կոստանդին Ծիրանածին (Վարչութիւն Կայսրութեան, էջ 228) կը խօսի նաեւ կիրճերու պահնորդութեան մը (Kleisoura = Clisure) մասին որ կը գտնուէր Լիկանտոս և Ծամնդաւ քաղաքներուն միջեւ։

Ասիկա լաւ ճանչցուած և կարեւոր անցք մըն է ուրկէ Հռոմէական ուղին անցաւ Արիարաթիայէն դէպի Քոտուզապալա և հետեւաբար վերապահութեամբ կը զետեղէ Լարարա = Լիկանտոսը այս հովիտին մէջ Քէօյի Նէրէի և Քոտուզապալայի մօտ (տես Ramsay, նոյն, էջ 292)։

Այս քաղաքը բոլոր երկրին ամէնէն ամուր քաղաքն էր և ռազմական կարեւոր դիրք մը ունէր (Schlumberger, «L'Epopée Byz.» Ա. էջ 371)։

Արդէն Լարիսայի վրայ խօսուած ատեն ըսի թէ այս շրջանները ինչպէ՞ս եղած են Պաւղիկեանց բնակավայր-ապաստանը և հոն Մլեհ ինչպէ՞ս Հայ գաղթականներ բնակեցուցած է։

Թէոդորա կայսրուհիին հալածանքները երբ պարտաւորեցին Պաւղիկեանները անցնիլ թշնամիին կողմը, Կարպէաս 5000 փախստականներով գնաց Մալաթիոյ էմիրին քով, որ զայն ընդունեց մեծ պատւով։ Ան ապահովութիւն ստացաւ և խոստում առաւ և յետոյ հիմնեց Արկաունը, Տիվրիկը և Ամարան կամ Աւարան, որ այս թուականներուն հիմնուած Պաւղիկեան քաղաքներէն մին էր (Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 251) և գլխաւորներէն մին անոնցմէ բնակուած քաղաքներուն (Կենտրենոս, Բ. էջ 154)։

Այս քաղաքը գրաւուած է Վասիլէն, երբ Տիվրիկէն Տարէնտէի ճամբով կը քալէր Մալաթիոյ վրայ (Կենտրենոս, էջ 207)։

Կը կազմէր Սեբաստիոյ թեմին մէկ հեծելազօրաց գունդին կեդրոն, յետոյ Ռոմանոս Լեկաբենոսի ատեն կիրճերու պահնորդութիւն մը (Կոստանդին Ծիրանածին, Վարչ. էջ 228)։

Այս քաղաքը Վասիլ Բ. տուաւ Վասպուրականի Սենեքերիմ Արծրունի թագաւորին 1021 ին (Կենտրենոս, Բ. էջ 464, Անտերսըն, Road System. էջ 32)։

3. ԽԱԻԱՏԱՆԷՔ կամ ԽԱԻԱՐՏԱՆԷՔ, յիշատակուած իբր ամրոց, Սեբաստիոյ հարաւ արեւմտեան կողմը, ըստ Զամիչեանի (Գ. հտ. յաւել-



ուած, էջ 154) և Կոմմագենացիի։ Պատմութիւնը արդարեւ կը հաստատէ անոր ամուր քաղաք ըլլալը և հոն ապաստանիլը՝ Ատովմի և Ապուսալհի, երբ 1059ին Սեբաստիան պաշարուած էր (Ուռ. էջ 160, Սմբատ, 73)։

Աղեքսանդրեան Գեր. (տես, Պատմութիւն Սեբաստիոյ, էջ 155) կ'ըսէ թէ կը կարծուի թէ այժմու Կիւրինն է, միայն չէ ըսած թէ որո՞նք են այս ենթադրութեան հեղինակները և առ այդ ի՞նչ համոզիչ փաստ ունին։

Laurent զայն կ'ուղղագրէ Kavadanek (Byzance et les Turcs Seldjoucides. էջ 80) սակայն անոր տեղւոյն մասին ոչինչ կ'ըսէ։

Ռամսէյ նոյնիսկ չէ յիշած։

Հաւանօրէն աղաւաղուած մըն է բառը։

Այս վայրը ուրիշ առիթիւ չէ յիշուած։ Միայն զայն կը յիշէ Միխայէլ Ասորի (էջ 411) Սեբաստիոյ և Կեսարիոյ պէս իբր կարեւոր տեղ մը և անոր վրայ կը խօսի այնպիսի կերպով մը, որ բաւական կը լուսաբանէ անոր դիրքը, առանց սակայն բոլորովին ճշդելու։

Սելջուկ Սուլթան Մասուտ (1116–1156) երբ Մանուէլ կայսեր թելադրութեամբ «ժողովեալ զամենայն զօրսն Կապադովկիոյ եւ զՄիջագետաց, գնաց ամենայն պատրաստութեամբ եւ եմուտ երկիրն Հայոց: Եւ նոքա նախազէս եղեալ յառաջագոյն՝ ամրացեալ եւ պարբեալ էին ի լերինսն եւ յամուր տեղիսն: Եւ Սուլտանն գնաց իջաւ ի վերայ Թլին Համդնոյ»: Հոն մժեղներու յարձակումէ մը նեղուած «սկսան փախչել»: Այն ատեն «իջին զօրն Հայոց ամրացեալքն ի լերինս, եւ կոտորեցին զբազումս ի նոցանէ...: Եւ եղ վաղվաղակի Պարոն Թորոս (1145–1169) ընդ ՄԻՋՈՑՍ ԼԵՌԱՆՑՆ ի Խաւսանէսն եւ եհար զքուրսն որ բնակեալ էին անդ եւ դարձաւ բազում զերեօք եւ աւարաւ ու անասնոց փառօք յամենայն մարդկանէ: Իսկ Մասուդ Սուլտանն գնացեալ ՍԱԶԱՆՈՒՐԾ յորդւոցն Հայոց մեծ ամօթով, եւ հասեալ ի Կոնն (Իկոնիա) կրկին հարեալ ի Տեառնէ մեռաւ» (էջ 429)։ Այս հատուածին ուշադիր ընթերցումը երբեք թոյլ չի տար Խուարտանէքը տանելու Սեբաստիոյ հարաւ-արեւմուտքը, այլ ան պէտք է գտնուի Տաւրոսեան անցքերէն Գոնիա տանող ճամբուն վրայ, հետեւաբար աւելի Կեսարիոյ հարաւ-արեւմուտքը։ Աւելի որոշ եզրակացութեան մը գալ կարելի չէ։

4. ԾԱՄՆԴԱՒ կամ ԾԱՄԱՆԹՈՍ (Tsamandos կամ Tzamandos).— Բիւզանդական պատմաբաններու կողմէ (Կենտրենոս Բ. 423) յիշուած Կապադովկեան այս քաղաքին վայրը ճշդելու համար Ramsay մեծ ճիգ ըրած է (տես Historical Geography of Asia Minor, էջ 289–292) սակայն արդիւնքի տեսակէտով շատ պայծառ չեն իր եզրակացութիւնները։ Ramsay հոս կը հետեւի տարօրինակ մեթոտի մը Ծամնդաւէն ածանցուած համարելով Սամանթի Սու (ըստ իրեն հիներու Կարմալասը) գետին անունը և ասկէ հետեւցնելով թէ Ծամնդաւ պէտք է ըլլայ այս գետին վրայ (էջ 289), և այս անունը գործածուած ըլլայ — տրուած ամրոցի մը կամ աւանի մը — նախ թրքական շրջանին։ Այս տեսութեամբ այս գետին ընթացքին վրայ կը փնտռէ վայրեր որոնք հաւանականութիւն ընծայեն Ծամնդաւը ըլլալու և կը գտնէ միայն երկու վայր, մին այսօրուան Ազիզիյէն (երբեմն Բունար Պաշի) և միւսը Վիրան Շէհիրը որուն մէջէն կ'անցնի Սամանթի Սու, իր ակէն քիչ հեռու։

Ազիզիյէն կը գտնուէր շատ նշանակելի, տպաւորիչ և կարեւոր

դիրքի մը վրայ, ուր Սամանթի Սուն շրջապատող բլուրներէն կը թափին ակերու ճոխ շարքեր և կը կազմեն հոսանք մը որ աւելի քան կը կրկնապատկէ գետին ջուրը։

Ramsay' ազբիւրներու այս շարքէն ծնունդ առնող վայրին անունէն կը կարծէ թէ առած է գետը իր անունը, որով կը կարծէ թէ Ազիզիյէ պատշաճօրէն կրնայ նոյնացուիլ Ծամնդաւի հետ, որուն համար ըսուած է թէ բարձրաբերձ բլուրի մը վրայ էր՝ ինչպէս է Ազիզիյէն այսօր (Ramsay, նոյն, էջ 289), իսկ Կարմալիսը՝ որ երբեմն տուած էր իր անունը նոյն գետին՝ կը նոյնացնէ Վիրան Շէհիրի հետ, սակայն ոչ առանց երկբայութեան, վասնզի կը խորհի թէ Կարմալիս կրնայ եղած ըլլալ հին անունը տեղւոյ մը, որ Բիւզանդական շրջանին կը կոչուէր Տամնդիս։ Թերեւս նոյնիսկ Սամանթի կամ Զամանթի կրնայ օտար անուն մը եղած ըլլալ, հաւանաբար գործածուած թուրքերէն՝ առնելով բիւզանդական հեղինակներէ «քէեւ կ'ըսէ Ramsay (էջ 290) ինծի ծանօթ ուրիշ օրինակներ յոյն պատմաբաններու կողմէ գործածուած բռնական անուններու բոլորն ալ աւելի վերջն են»։ Իր տեսութեամբ Տամնդաւ կամ Զամանթոս «քան մը ունի բնիկ Անատոլեան ծեծով իր մէջ» (նոյն, էջ 290) և միակ նոյնացումն որ հնար է ընել Ստրաբոնի յիշած (էջ 540) Տազմանտա բերդին հետ կրնայ ըլլալ։

Արդ, Տազմանտա կրնայ վերածուած ըլլալ յետնագոյն դարերու մէջ աղաւաղումով Տամանդ(ոս)ի, բայց հոս ալ ուրիշ դժուարութիւն մը կը ծագի, վասնզի Ստրաբոն Տազմանտան կը զետեղէ Կապադովկիոյ արեւմտեան կողմը Քամանենէի(1) մէջ, արեւմտեան ծայրը այն բարձունքներուն որոնք Կապադովկիոյ հիւսիսային սահմանը կը գծեն, ուստի բոլորովին անկարելի է որ Տազմանտա Զամանթի Սուի վրայ ըլլայ (նոյն)։ Ռամսէյ կ'ըսէ թէ «բայց եւ այնպէս շատ հաւանական է որ երկու ՏԱԶՄԱՆՏԱ գոյութիւն ունեցած ըլլայ, ճիշդ ինչպէս ունինք երկու Կոմանա կոչուած վայրեր, Փռիւգիոյ մէջ երկու Մետրոպոլիս, երկու Ankyra եւ այլ, եւ ասիկա այն տեսակէտն է որուն ես կը յարիմ» (նոյն)։

Եթէ Ramsayի այս տեսակէտը իբր վաւերական ընդունուի այն ատեն մեծ հանգոյց մը լուծուած կ'ըլլայ, վասնզի կարելի կ'ըլլայ Գագիկ Աբասեանի ստացուածքները փոխադրել Ամասիոյ շուրջը և Վարդան Պատմիչի տեղեկութիւնները ընդունիլ վաւերական և իր հողերը համարել այս միւս Տամնդաւի, Լարիսաի (նոյնպէս Herpaէն զատ), Ամասիոյ և պոնտական Կոմանաի շուրջը։ Սակայն Ռամսէյ կ'զգուշանայ մօտենալ այն վկայութիւններուն որոնք անհրաժեշտ են հիմնաւորելու համար այս տեսութիւնը, և միշտ կ'ուզէ ապացուցանել թէ Ազիզիյէն է հին Ծամնդաւը։ Իրեն հետ համաձայն է նաև Murray's Handbook of Asia Minor (տես 260–1 և 267), Գելցեր (տես Սկզբ. Բիւզ. բան. գործին կից քարտէս) Laurent (Byz. et les Turcs և L'Arménie entre Byz. et l'Islam գործերուն կից քարտէսներ)։ Rennel (Western Asia Բ. հատոր, էջ 169) կը յիշէ թէ Արաբ աշխարհագիրներ կ'ըսեն թէ Զապետրա կը կրէր նաև Zamaneni անունը, որ կը նոյնացնէ ինքն Ծամնդաւին

(1) Քամանենէի համապատասխան շրջան նշանակած է Դեր. Անդրէասեան Զառա, Տիվրիկ ևայլն։ Ռամսէյ իր հիմնական գործին մէջ անոր վայրը կը նշանակէ Գըրշէհիրի շուրջը (The Historical Geogr. of Asia Minor, էջ 296-302)։



հետ, և զայն կը համարէ Մարաշի և Սամոսատի (հիմա Ալթուն Թաշ
Գալէ) մէջտեղը, մինչ կը նկատէ թէ Ծամնդաւի նկարագրութիւնը իբր
բարձր և ցից բլուրի մը վրայ շինուած՝ շատ հակառակ պիտի ըլլար
իր ենթադրած դիրքին։

Հիները զայն որոշապէս կը դնեն Կարմալըս գետին վրայ (Laurent,
Byz. et les Turcs, էջ 29)։ Ան կը գտնուէր Լիկանտոս թեմին մէջ և անոր
սահմանագլուխին վրայ նշանաւոր արօտատեղիի մը մէջ (Կոստանդին
Ծիրանածին, Թեմ. Ա. գլ. էջ 12) և Ժ. դարէն սկսեալ հայաբնակ էր (Lau-
rent. նոյն, էջ 29), Լիկանտոսի Հայոց պետ Մլեհի կողմէ հայաբնակ դար-
ձած քաղաքներէն մին ըլլալով (էջ 68)։ Ուրեմն եթէ Լիկանտոսի դիր-
քը որոշուի Ծամնդաւի տեղը որոշուած կ'ըլլայ։ Արդ գիտենք թէ Լի-
կանտոս առաջ անապատ և անբնակ երկիր մըն էր (ուրիշ բացատրու-
թեամբ անապահով դարձած՝ արաբներու աւարառութիւններէն առանց
ամբողջովին և խաղաղօրէն անոնց իշխանութեան ենթարկուած ըլլա-
լու) որ թեմ եղած էր Լեւոն Զ.էն 890ի առեններ։ Որով կը գտնուէր
աւելի Անտիտաւրոսի շրջանակին մէջ քան Կոմմագէնէի, ուրկէ երբեք
չէր անցած Բիւզանդական բանակը 745էն մինչև 877 և անկէ յետոյ
միայն մէկ անգամ, վասնզի Կոմմագէնէի մէջէն անցք չէին կատարած
Քրիստոնեաները մինչև 946։

Treatise de Velitat, «Bell. Niceph.»ի (էջ 250) մէջ ըսուած է թէ Լի-
կանտոս և Կապադովկիա բաժնուած են Կիլիկիայէն Տաւրոսով, զոր
մի քանի անցքեր կը ճեղքեն, Կիլիկիայէն դէպի Լիկանտոս և Կա-
պադովկիա հանող։ Արդ, որչափ որ յիշուած են Գերմանիկէ և Ատա-
նա տանող տարբեր անցքեր, այն անցքերը որոնց կ'ակնարկուի,
պէտք է ըլլան այն մէկ կարեւոր անցքը Անարզաբայէն և Սիսէն (Ֆլա-
վիաս) դէպի Հաճըն (Պադիմոն) և Կոկիսոն տանող և նաև հաւանաբար
այն դժուարին անցքերը որոնք Կիլիկիայէն դէպի Արգէոսի մերձաւոր
հարաւ գտնուող երկիրը կը տանին (Rams. էջ 291)։

Լիկանտոս ուրեմն հաւանականօրէն կը բովանդակէր ինչ որ Բիւ-
զանդական բանակները ձեռք անցուցած էին Զամանթի-Սուի արե-
ւելեան կողմը և թերեւս նաև Զամանթի-Սուի անմիջական արեւ-
մուտքը գտնուող երկիրը և Արգէոս լերան հիւսիսակողմը (Rams.
նոյն, էջ 291)։

Ռոմանոս Դիոժէնի 1068ի պատերազմներուն նկարագրութիւնը
յստակօրէն ցոյց կուտայ Լիկանտոսի թեմին դիրքը։ Իր ծրագիրն էր
ամառը Լիկանտոսի մէջ անցնելէ յետոյ, աշնան անցնիլ Սուրիա։
Այս ծրագիրը հետապնդելով ան Սուրիա մտաւ Կոկիսոնէն (=Կէօքսու)
դէպի Գերմանիկէ (=Մարաշ) տանող անցքէն, որ Լիկանտոսը կը
միացնէր Սուրիոյ (տես Ատտալիատէս, էջ 104, Սկիլիցէս, էջ 669)։

Ռոմանոս Դիոժէն 1068ին Սելջուկներու դէմ գացած ատեն անցաւ
Սեբաստիայէն, Կողոնիայէն, Լիկանտոսէն (Ատտալիատէս, էջ 105), Կե-
սարիայէն, Մարաշէն (նոյն, էջ 107, տես Սկիլիցէս, էջ 670)։

1068ին թուրքերը կը կողոպտեն Ամորիոնը (Ատտալիատէս, էջ 121) և
կը դառնան պաշարելու Տամնդաւը (նոյն, էջ 122, տես նաև Ապուլֆա-
րաճ, Syr. էջ 265-266, Ibn-el-Athis, Rec. Ori. Ա. էջ 237-238), որուն
Հայ բնակիչները մեղադրուած են յոյներէն որ չեն օգնած Ամորիոնի,
երբ թուրքերը յարձակած և կողոպտած են զայն երբ կայսրը Սուրիա
էր (տես Gfrörer A. F. «Byzantinische Geschichten», Graz. 1872, Գ. հտ.

էջ 714)։ Աֆշին, երբ դարձաւ Խոնայի աւարառութենէն, Տաւրոսի մէջ, ի Ծամնդաւ(1) ձմեռուան ցուրտէն նեղուեցաւ (1070–1071) (Ապուլֆարաճ, Syr. էջ 267, Ատտալիատէս, էջ 140, Laurent, Byz. et les Turcs, էջ 25–26)։

Ասոնք ամէնն ալ զօրացնել կը միտին այն տեսութիւնը թէ Ծամնդաւը պէտք է փնտռել Սամանթի-Սուի շուրջը կամ վրան և իբր յարմարագոյն վայր գրեթէ օտար բոլոր քննասէրները կանգ կ'առնեն Ազիզիյէի վրայ։

Մեր պատմագիրները դժբախտաբար նոր լոյս մը չեն սփռեր և Հայ բանասէրները իրենց կարգին շատ համաձայն չեն։

Ջամիչեան (Բ. հատ. էջ 983) տարուելով Վարդան պատմագիրէն կը ճշդէ անոր տեղը «դղեակն Ծամնդաւ որ էր քաղաք ընդ մէջ Ամասիոյ եւ Կոմանայ եւ Լառիսեայ յաշխարհին Փոքուն Հայոց»։ Իսկ այլուր (Գ. յաւել., էջ 155) «առ սահմանօք Երկրորդ Հայոց ընդ արեւելակողմն Ամասիոյ» կը գրէ, քիչ մը աւելի ճշգրտել ջանալով անոր տեղը։

Սրդէն ըսինք թէ Ramsay այսպիսի հաւանականութիւն մը նշմարած է Կապադովկիոյ արեւմտեան հիւսիսային սահմաններուն վրայ գտնուող և Սարաբոնէ յիշուած Տազմանեան նոյնացնելով Ծամանդոսի հետ, առանց սակայն ժխտելու արեւելեան կողմը Լիկանտոսի մէջ ալ Ծամանդոսի մը գոյութիւնը։

Վեհ. Տ. Բաբգէն կաթողիկոս և հանգ. Տրդատ եպս. Պալեան Ծամընդաւը կը նոյնացնեն Թոմարզայի հետ, չեմ գիտեր ի՛նչ տուեալներու վրայ հիմնուած։ Թերեւս անոր Կեսարիոյ մօտ տեղ մը և անոր արեւելեան կողմը ըլլալուն ոյժ կուտայ Միխայէլ Ասորիի (էջ 458) սատղերը ուր կ'ըսէ թէ 1165ին «էառ խլիճ Ասլան զԿեսարիա եւ զԾամնդաւ յորդւոյն Դանիշմանայ»։

Նաև Ալեքսանդրեան Անդրէաս վրդ. (Պատմ. Սեբաստիոյ, էջ 154) Ծամընդաւ «ամրոցը» կը հաւաստէ թէ «Թոմարզայի սահմանին մէջ էր» և կը գտնուէր Զամանթի գետին եզերքը (Նոյն, էջ 155)։ Նոյն հեղինակը, անշուշտ քաղելով Բիւզանդական պատմութենէն Ծամնդաւի մասին կու տայ իբր ծանօթութիւն սա յատկանշական տեղեկութիւնը թէ ան «մերկ ապառաժի վրայ շինուած քաղաք մ'էր» (Նոյն, էջ 131), նկարագրութիւն որուն Թոմարզայի որքան պատշաճիլը չեմ գիտեր։

Յետոյ խնդիր է գիտնալ թէ քաղաքը և ամրոցը իրարմէ անջա՞տ չէին։

Նոյնպէս բաւական խնդիր է թէ յոյն պատմիչներու Tsamandosը կամ Tsamantosը իսկապէս նո՞յնն է մեր Ծամնդաւին հետ։

Օրմանեան Մ. (տես ՀԱ. 1909, էջ 88) Ծամնդաւը կը նոյնացնէ Ծամանդրայի (Samantra) հետ, թրքական անունով Սամանտըրէ, որ կը գտնուի Էնտապալը գիւղին (ի հնումն ANDABALIS) մօտերը ըստ Պ. Բար-

(1) Արաբ պատմագիրը Simandoua անունով կը յիշէ քաղաքը և զայն կը ներկայացնէ Մակեդոնիոյ մէջ, որ Հայկական Տաւրոսի մէկ մասն էր։ Այս անունը Պաւղիկեանք — որոնք սիրահարներ էին Ս. Գիրքին և հնութեան անուններուն — տուած էին Kibossa գիւղակին, Կողոնիոյ երկրին մէջ, հիւսիսային Տաւրոսի (Պետրոս Սիկիլացի, Historia Manichaeorum — Laurent, նոյն, էջ 25-26)։ Եթէ ճիշդ է այս տեսութիւնը այս անգամ ալ Ծամնդաւը կը փոխադրուի արեւելեան-հիւսիսային կողմը Կապադովկիոյ։



սեղ Օհաննեանի, որ ինքն ալ իր կարգին բոլորովին անտեղեակ Օրմանեանի կարծիքին, իր հետազօտութիւններով միեւնոյն եզրակացութեան յանգած է։

Անտապալիս քաղաքը ծանօթ է արդէն Անտոնինոսի ճամբորդութեան մէջ և կը գտնուի Նիկտէէն մէկ ժամ և Տիանայէն 3 ժամ հեռաւորութեամբ։

Յոյներն ալ կը ճանչնան քաղաքը ΣΑΜΑΝΔΡΑ անունով։

Այս քաղաքը կը գտնուէր ինչպէս կը տեսնուի Միսուանի կից քարտէսին վրայ ալ Անտապալըի մօտ — որ կարեւոր կեդրոն մըն էր ձիաբուծութեան և անոր տէրը Pampalus կը հպարտանար Հռոմի կայսրէն աւելի ձիեր ունենալուն — և յիշուած է Անտոնինոսի ուղեւորութեան մէջ։ Գետ մը՝ հաւանականաբար Գօրգունի (Korkoun կամ Corcoun) մէկ ճիւղը կը բաժնէ այս երկու քաղաքները։

Այս գետը աւելի քան հաւանական է որ Զամանթիի շարունակութիւնը կամ ճիւղերէն մին ըլլայ և սոսր ապացոյցը կու տայ Ալիշան (Միսուան, էջ 169) գրելով. «բայց հարկ է մեզ եւ զայս եւ զամենայն փափագելի ծանօթութիւնս միջագետացս զուգառաջն Սարոսի 'ի Հանեայ եւ 'ի վեր, մինչեւ անդր քան զարեւելակողմն Արգէոսի եւ Կեսարիոյ՝ ցակունս Զամանդեայ, յանձնել ի քննութիւնն բաղդաւորի յետագայի, եւ առանձինն զտեղին կամ զէն՝ յորմէ առնու արեւմտեանդ այդ առաջ գետոյն զանունն, զկոչեցեալն 'ի պատմչաց մերոց Ծամընդաւ, եւ զառ 'ի կայսերաց տուեալն Գագկայ թագաւորին կաորոց, փոխանակ զաւառին Վանանդայ. չէ մեզ առաւնոր փոյթ քննութեանն սորին՝ թէ իցէ՞ արդարեւ յայսմ մարզի՝ եթէ քաջ 'ի բաց անդրագոյն մինչեւ 'ի սահմանս նահանգին Ամասիոյ, որպէս ոմանց թուեցաւ...»։

Որմէ որոշ կ'երեւայ թէ ըստ Ալիշանի գետին արեւմտեան ճիւղէն առած էր Ծամնդաւ ամրոցը իր անունը։

Ուրիշ տեղ մը նոյն հեղինակը (Միսուան, էջ 158) կ'ըսէ «Արեւմտեան առաջք Սարոսի (= Սիհուն) կարհագոյն քան զարեւելեանն՝ կոչի ԶԱՄԱՆԴԻ (Ծամնդաւ) եւ բղխէ 'ի Գալէ սառ լեռնէ ի Հս. Եյ. Կեսարիոյ, ի հովտին ԹՈՒՐՈՒՆ կամ ԴՈՒՌՈՆԱ ՕՎԱՍԻ, իբր յ2000 Զ. բարձուէ...»։

Արդ Զամանթի կազմելով Սարոսի արեւմտեան թեւը կը հոսի դէպի հիւսիս-արեւմուտք ուր կը գտնուի Սամանդրան։

Գէորգ Ասլան (Etudes Historiques, էջ 331), Ծամնդաւի վրայ խօսելով ինքն ալ կը հաստատէ նոյն տեղագրութիւնը, ըսելով թէ «պզտիկ վայր մը Կեսարիոյ հարաւակողմը Սարոսի մէջ թափող Զամանթի գետին եզերքը»։

Հաւանօրէն գետ և քաղաք մին միւսէն առած են իրենց անունները։ Հետեւաբար անժխտելի է որ Ծամնդաւը պէտք չէ այլուր փնտռել այլ Սամանդրայի տեղը։ J. de Morgan (Hist. du Peuple Arménien, էջ 166), ինքն ալ կը միտի համաձայնիլ այս տեսութեան գրելով թէ «չենք գիտեր ճշգրիտ դիրքը որ կը գրաւէր Կապադովկիոյ մէջ Գագիկ Բ.ի սեպհական Զամանթիի (Zamante) երկիրը, բայց ամէն ինչ կը մղէ հաւատալ թէ անիկա կը գտնուէր Գոնիայի հիւսիս-արեւելեան կողմը, վասնզի Կիզիստրա ուր վերջին Բագրատունին սպանուեցաւ, Կեսարիոյ մօտն էր»։ Եւ անմիջապէս կը յարէ թէ «արդ այս քաղաքին շրջակայքէն էր որ մեկնեցաւ Ռուբէն։ Ամէնէն առաջ իր քայլերը ուղղեց դէպի արեւմուտք եւ գրաւեց հիւսիսային Կիլիկիոյ լեռնային զանգուածները»։

Սամանտրան կը գտնուի կապարի և արծաթի հանքերուն սկիզբը Կիւմիւշ Մատէնէն դէպի հիւսիս։

Պատմական դէպքերու յիշատակութեան երբեք չի հակասեր այս տեղագրութիւնը, որով անժխտելի է։

5. ՊԻԶՈՒ.— Այս քաղաքը որ լատին տառադարձութեամբ Bizou կը գրէ Laurent, (Byzance et les Turcs seldjoucides, էջ 130) կը գտնուէր Տաւրոսեան լեռներու մէջ, Կապադովկեան Կեսարիոյ արեւելեան կողմը (Dulaurier, Etude sur l'Organisation politique, religieuse et administrative du Royaume de la Petite Arménie. REC· ARM. Ա. 1869, էջ 4) ոչ հեռու Կեսարիայէն (Laurent, նոյն, էջ 38)։

Սակայն ինչպէս կը տեսնուի որոշ տեղ մը չէ նշանակուած։ Այս վայրով դժբախտաբար մեր Հայ բանասէրներն ալ գրեթէ չեն զբաղած։

Օրմանեան (ՀԱ 1909, էջ 88) Պիզուն համապատասխան կը դնէ Պիչարի անուն վայրի մը։ Տրդատ եպ. Պալեան կ'ըսէ թէ Ծամնդաւ կամ Զամանթը գետին մօտերը կայ Էֆրէկ անուն հայաբնակ գիւղ մը որ կը կարծէ թէ Պիզուն ըլլայ։ Այս եզրակացութեան կու գայ անիկա վասնզի Էֆրէկ գիւղը մօտիկ է Կիզիստրայի և այդ կողմի 60-70ի չափ, մեծ մասամբ հայաբնակ գիւղերը կը կոչուին Պօզուքի գիւղեր։ Էֆրէկ այս գիւղերուն առաջինն է։ Կը խորհի թէ Պիզու անունը եղած է Պիզուկ և ապա ժողովրդեան բերնին մէջ փոխուած է Պօզուքի (տես Հայ վանօրայք, էջ 125–126)։

Ուրիշներ ալ Պիզուի Ս. Խաչ վանքն Թոմարզայի վանքին հետ կը նոյնացնեն (Հայ վանօրայք, էջ 125)։ Բոլորն ալ երկբայական ու կասկածելի մեկնութիւններ։

Տիար Յարութիւն Օհանեան իր հետազօտութեանց հիմնաքար դնելով սա ճշմարտութիւնը թէ Կիբիստրա (Cibistra, ΚΥΒΙΣΤΡΕΩΝ) կը համապատասխանէ այսօրուան Էրէյլիին (համաձայն Ռամսէյի, էջ 341, և այլոց) և Կիբիստրա այն բերդն էր ուր կը գտնուէր Բիւզանդական պահականոցը՝ ուր կը նստէին Մանտալեան եղբարք, Պիզուն կը նոյնացնէ Էրէյլիի մերձակայ Պիզանթիի կամ Պօզանթիի հետ, որ էր Հռոմայեցւոց Podando = Poduandoն և Յունաց Ποθαυθος որ Մեծն Աղեքսանդրի ժամանակէն յայտնի էր և կը նկատուէր Կապադովկիոյ սահմանագլխի ամրութիւնը(1) (Կոստանդին Ծիրանածին, Թեմորայք, նաև Սիսուան, էջ 132)։ Փոքր Կապադովկիոյ այս քաղաքը 23 հռոմէական մղոն հեռու էր Փաւստինուպոլիսէն (Faustinopolis = Պասմաքչի ըստ Ալիշանի) և 30 քիլոմէթր՝ Տաւրոսեան անցքերէն Գիւլէք Պօղազիէն (ըստ Texierի), ինչ որ ճշդիւ կը համապատասխանէ Պիզանթիի։ Այս նոյնացումը կը հաստատեն նաև Murray's Handbook of Asia Minor և այլք։ Սակայն այս անգամ շատ կարեւոր դժուարութիւններ կու գան կը կանգնին մեր դէմը։

Առաջինը երկու Կիբիստրաներու գոյութիւնն է։ Մին յիշուած Ստրաբոնէն (ԺԲ. 1) և համապատասխան Ծոկք դղեակին և միւսը Կապադովկեան քաղաքը՝ Կիլիկեան անցքերու բերանը (Morgan. Histoire du Peuple Arménien, էջ 171) որ որոշելու համար միւսէն կոչուած է Կիբիստրա Հերակլէա (Cybistra Heracles) (Մելիք Թէվէքքէլ, ՀԱ. 1914, էջ 159)։

Պիզուն սանցմէ որո՞ւն մօտն էր։

(1) Խաչակիրք այս վայրը կը կոչէին Podandus, Opodando, Botentron և այլն։



Երկրորդ հարցը սա էր թէ Մանտալեան եղբարց նստոցը Կիբիստրա՞

էր թէ Կիզիստրա:

Հայ պատմագիրները Մանտալեան եղբարց բնակավայրը կը նշա-

նակեն Կիզիստրա (տես Մատթէոս Ուռհայեցի, էջ 263) որ նոյնն է

Կնտրոսկաւիսի հետ (դարձեալ ըստ Ուռհայեցիի, էջ 397)։

Եթէ արդարև Կիզիստրա (ըստ ոմանց այսօրուան Տէվէլու Գարա

Հիսարը կամ Գոնիայի հիւսիս-արեւելքը, Morgan, էջ 166) անուն վայր

մը գոյութիւն ունի, կը քանդուի վերի տեսութիւնը։ Եւ դժբախտա-

բար այս մասին համաձայն չեն հեղինակաւոր գիտուններ։

Յրոֆ. Ռամսէյ և Laurent, Պտղոմէոսի (Ե. 6, 15, և 7, 7) նշանա-

կած Kyzistra ձեւը իբր գրի սխալ ենթադրելով Kybistraի վերածած

են (տես His. Geog. of Asia Minor, էջ 306 և 357)։

Սակայն Գելցեր (Ակզբ. Բիւզ. Բանակ. էջ 39) սխալ մը կը համարէ

այս նոյնացումը և կ'ըսէ թէ Նիկիոյ հարց հնագոյն հրատարակու-

թեանց մէջ Cyzistrorum ձեւով կը յիշատակուի վայր մը որուն «ընթեր-

ցուածին ձեւը թերեւս մեզի երաշխաւորութիւն չի տար ձեռագրաց մէջ եւս նոյն-

պէս ըլլալուն սակայն միւս կողմանէ ալ Հայոց միայն Կիզիստրա ձեւը ծանօթ

ըլլալուն բնաւ ամենեւին տարակոյս չկայ»:

Laurent այս դժուարութիւնը լուծել կը կարծէ Մանտալեանց բնա-

կավայրը ենթադրելով ուրիշ վայր մը Guizisdara(1) անուն (Byz. et

les Turcs, էջ 80) զոր կը յիշատակեն ըստ իր տեսութեան Կիկերոն

(Ad. famil XV 4) Պտղոմէոս (Ե. 6, 15, և 7, 7) և Մասուդի զայն կը

կոչէ Աստերապոլիս (տես Le livre de l'Avertissement. Թարգ. Փրն.

Carca de Vaux, Paris, 1897, էջ 242) և արաբները զայն կը կոչէին

Ջոսասթրուն (Djosastaroun) (իսկ Խորդադ-

բէ՛լ կիլա (Dhoulkila) կամ Ջոսասթրուն (Djosastaroun) (իսկ Խորդադ-

բէ, էջ 80 կամ Գելցեր, Ակզբն. Բիւզ. Բանակ. էջ 38. տես նաև վերը,

էջ 353-4) որ կը նշանակէ «աստղերու մերձեցող» ("Εγγύς ἀστέρων)։ Սա-

կայն Եաքուտ որովհետև կ'ըսէ թէ «Հրանի ու զ'իբիլա'ա Միսիսի մօտ

Յունական սահմանագլուխին մօտերն է»,² զայն կը հեռացնէ և կը տանի,

դէպի Արեւելք, մինչ ըստ Լօրանի ան կը գտնուէր Տաւրոսի կողերուն

վրայ դէպի Կապադովկիոյ կողմը, Կեսարիայէն ոչ հեռու։

Տոմաշէկ որ նոյնպէս կը զատէ Կիզիստրան՝ Կիբիստրայէն կ'ըսէ

թէ պէտք է աւելի արեւելք Սարոսի վերին հովիտին մէջ դնել Կի-

զիստրա կամ Կնտրոսկաւիս (Guentrosgavis) բերդը (տես W. Tamaschek.

Zur historischen Topographie von Kleinasien im Mittelalter. Wiener

Sitzungsber, հտ. CXXIV 1891, էջ 85)։

Ալիշան եւս կանուխ քան բոլոր այս հեղինակները իր Սիսուանին

մէջ (էջ 167–168) այս հարցի վրայ կը խօսի և ինքն ալ հակամէտ չէ

նոյնացնելու Կիզիստրան և Կիբիստրան։ Իր տեսութեան համաձայն

«Կիզիստրա ... ըստ Պեւտինգերեան ի ցեխանագրութեանն՝ ընդ մէջ Կեսարիոյ

եւ Տիանեայ...։ Մերայինք զբերդն, որով եւ է անուամբ՝ ասեն զոլ 'ի դաշտին

Արգիաւոյ (Արգէոս լերին) կամ «մեծ յԱրգիաւ». արքունի պաշտպին եւ Սմբատ

նոյրտագոյն եւս տան նշանակ: «Անուր բերդ մի՝ մօտ ի Զկնջուր, վերանայեաց

(1) Արդեօք կարելի՞ է Կէօստէրէի հետ նոյնացնել, ինչպէս ոմանք կը կարծեն և կը դնեն Կանկայի (այժմ Ֆէքէի) մօտ (տես, Յուսաբեր, 3 Օգոստ. 1934, Թ. 104)։

աշխարհին Գամրաց»։ Մասքէոս ոչ վերահայեաց առէ՝ այլ «լեռնահայեաց աշխարհին Գամրաց», զոր Ամբաս փոխէ «լեռնահայեաց՝ ի Գամրաց աշխարհին(1)». առաջինն (Մասքէոս) ծանուցանէ զի ոչ լոկ գետ է իմանալ զտեղի սահմանին՝ այլ եւ վիճակ. զի առէ, «մերձ *ի յերկիրն* որ կոչի Ձկնջուր»։

Անծանօթ է մեզ արդ յայս անուն տեղի կամ գետ. զի թէպէտ եւ գոյ *Պալըգլու Սու*(2) գետ, այլ հեռագոյն արեւելից հիւսիսոյ 'ի կողմանս Կիւրինի. իսկ տեղի բերդիս զորմէ խնդիրս է՝ մերձ յԱրնիասայ դաշտն էր, յելից հարաւոյ նորին. անդէպ գոլով յարձակ վայրի լինել այնմանոյ բերդի՝ «անաւոր բարձրութեամբ ամրացեալ», որպէս առէ Ուռհայեցին, եւ լեռնահայեաց կամ վերահայեաց գոլ աշխարհին Գամրաց։ Լաւագոյն թերեւս ասիցէ Հեթում 'ի ժամանակագրական յիշատակս իւր, «'ի բերդն Կենդռոսկոյի 'ի *Լիկանդոնն*»։

*Ալիշանի այս տեղեկութիւններուն վերջին մասը որ Կիզիստրան տեղափոխել կը միտի արեւելեան կողմը Կեսարիոյ՝ Լիկանտոնի մէջ, կարծես թէ համաձայնիլ կը թուի Եագուտի հետ, որ Միսիսի մօտ կը տանի զայն, և ըստ Հեթում պատմիչի սահմանակից Վահկայ բերդին։ Նաև անշուշտ իր «անաւոր բարձրութեան» համար «աստղերու մերձ» տիտղոսը առած է Յոյներէն և Արաբներէն։*

*Այս կերպով ինչպէս կը տեսնուի Կիբիստրան Կիզիստրայէն կ'անջատուի, սակայն չի ճշդուիր երկրորդին տեղը որպէսզի կարելի ըլլար գտնալ* Պիզուն *որուն տեղը ճշդելու գործը իսկապէս դժուարութեանց կը հանդիպի։*

*Աւելորդ կը համարեմ հոս* «Biza»*ի մասին խօսիլ (տես* Rams. *էջ* 426) *և Պիտանա* (Bidana) *կամ Պիտանէ* (Bidané) (*յետոյ Ղեւոնդուպոլիս*) (*Նոյն, էջ* 369) *քաղաքներու վրայ խօսիլ որոնք մեզի աւելի հեռուները կը տանին։*

*Ռամսէյ Պիտանան կը նոյնացնէ Հայաստանի Պիզանային* (Bizana) *հետ, որ կը յիշատակէ Պրոկոպոս* (de Aedif *Գ.* 5) *և կը կարծէ թէ* Պիզա*նա ժամանակի ընթացքին* Պիզուի *վերածուած է։*

*Այս քաղաքը միայն* 17 *ստատ հեռու էր Իսաւրուպոլիսէն* (Rams. *էջ* 369)*։ Եթէ այս տեսութիւնը ճիշդ ըլլայ* Պիզու *Դարամանէն արեւմուտք նետուած կ'ըլլայ և կարելի չ'ըլլար համաձայնեցնել Ուռհայեցիի և Սմբատի տեղեկութիւններուն։*

*Այնպէս որ Պիզուն կը մնայ չճշդուած վայր մը, հակառակ իր պատմական անցեալ մը ունենալուն։*

*Այսպէս Բիւզանդական պատմութեան մէջ կը յիշատակուի թէ Արտաւազդ Օբսիկիոյ զօրավարը իր ձախողելէն յետոյ ապաստանած է* 742*ին* Պիզու *կամ Բիւզանդական* Պուզանա*։*

*Նոյնպէս* Պիզու *այն քաղաքներէն մին էր որ ամրացուց Լեւոն Ե. Հայկազն կայսրը* (813–820) (*տես* Ասողիկ *Բ. գլ. Զ. գերմաներէն թրգ. էջ* 107 *և Սամուէլ Անեցի* Brosset*ի Ֆրանս. թրգ. էջ* 421 *Նաև* Laurent, Byz. et les Turcs, *էջ* 20)*։*

*Մատթէոս Ուռհայեցիի* (*էջ* 111) *և Սմբատ Գունդստապլի* (*էջ* 62) *հետ Կենտրենոս* (*Բ. էջ* 559) *կը յիշէ* Պիզուն *իբր Գագիկ Բագրատունիի տրուած վայր, այնպէս որ ոևէ տարակոյս չկայ թէ ԺԱ. դարուն կար այդ անունով քաղաք մը կամ գիւղակ մը որ իբր նստոց ծառայեց Գագիկ Բագրատունի՝ Անիի վերջին թագաւորին, որ հոն չինեց վանք մըն ալ՝ Ս. Խաչ անուն և ուր յետոյ ինքն ալ թաղուեցաւ։*

*Գագիկի ստացուածքները որոնք երբեք չէին արժեր Անին, ինչպէս կը շեշտէ Լաստիվերտցի, կ'երեւայ թէ երկրորդական կարեւորութիւն մը միայն ունէին, և անոր համար էր որ թերեւս* Պիզու*, իբր աննշան վայր կամ աքսորավայր, չունէր մեծ անուն և ասոր համար է որ այսօր չենք կրնար իր տեղը ճշդել։*

*Հայ պատմիչները միահամուռ կը հաստատեն Գագիկի աքսորական հանգամանքը։*

*Կը պատմուի նոյնիսկ թէ Կոստանդին Մոնոմախոս Անիէն կամաւոր հրաժարելու պարագային իրեն խոստացած էր Մալաթիոյ պէս սահմանագլուխին վրայ գտնուող կարեւոր տեղ մը տալ (Լաստիվերտցի, էջ* 61) *սակայն իր չհամակերպելուն համար յետոյ չտուաւ, և հետեւաբար աքսորի հանգամանքով երկրորդական և երրորդական վայր մը ղրկուեցաւ, շնորհազուրկ վիճակի մէջ, կամ ինչպէս Լաստիվերտցի ըսած է կայսրը առաւ իր ուզածը (Նոյն)։*

«Գագիկ ստացաւ իբր կալուած (Epanage) Կապադովկիոյ մէջ Պիզու պզտիկ քաղաքը որ իրեն համար փոխարինութիւն մը ըլլալէ աւելի աքսորավայր մը եղաւ մինչեւ 1079։ Իր յամառ եւ կռուազան նկարագիրը ստեղծած էր թշնամիներու խումբ մը պահակազօրքին սպաներուն մէջ, որոնք զայն բռնեցին եւ բանտարկեցին Կիբիստրայի(1) դղեակին մէջ ուր անոնք կատարեցին զինքը խեղդելու ոճիրը» (*Գէորգ Ասլան*, Etudes Historiques sur le peuple Arménien. Paris 1928, *էջ* 325)*։*

*Մանտալեան եղբայրներուն կողմէ իր ձերբակալումը ցոյց կու տայ թէ Գագիկին նստոցը մօտն էր անոնց բերդին ուր Բիւզանդական պահակազօրք կը գտնուէր, սակայն որոշ չէ թէ ի՛նչ էր բերդին անունը Կիզիստրա՞ թէ Կիբիստրա։*

*Ինչպէս կը տեսնուի միշտ կը գտնուինք անելի մը առջեւ ուրկէ դուրս ելլելու համար պէտք է ընդունիլ Կիզիստրա = Կիբիստրա, և զայն փոխադրել* Morgan*ի հետ Այնթապի մերձակայ Ծովք գիւղակը, ինչ որ չափազանց յանդուգն քայլ մը պիտի ըլլար, կամ կանգ առնել Պոտանտոսին վրայ որ ըստ* Texier*ի* «եղաւ ամէն ժամանակ [illegible] տեղ մը եւ Ս. Բարսեղ զայն կը բաղդատէր Charoniumի հետ որ կը ծայթէր ժանտ ոգիներ» (*Հմմտ. Նաեւ* Սիսուան, *էջ* 132)*։ Արդարեւ Ս. Բարսեղ իր ճառերէն մէկուն մէջ կ'ըսէր.* «երբ կ'ըսեմ Պոտանտոս զայն կը նկատեմ Լակոնիոյ Կէաստան կամ աշխարհի ոեւէ մէկ անդունդը եւ զայն կ'անուանեմ դժոխք կամ Քարոնիա որ ինքնաբերաբար կազմուեցաւ շնչելով ախտաբեր օդը, երբ կը տեսնես զայն նկատի առ որչափ զարհուրելի է Պոտանտոս» (Սիսուան

---

(1) *Ալիշան յաւելուածին մէջ* Սիսուանի (*էջ* 518) *կ'աւելցնէ թէ* Կենդռոսկոյ *Կիլիկիոյ ժամանակագիրէն ըսուած է թէ* Տէվէլու Գարահիսարն *է, որ Արգէոսի հարաւ-արեւմտեան կողմն է, և ինքն կ'ըսէ թէ եթէ բուն այն ալ չէ, պէտք է անոր մերձաւոր բերդ մը ըլլայ, և քարտէսին վրայ գտնալով* Չէնկիպար *կամ* Ճէնհիպար զալէ *բերդ մը, կը կարծէ թէ ան կրնայ ըլլալ, թէև առանց պնդելու։*

(2) *Այս գետը կը թափի Եփրատի օժանդակ Թոքմա Սուի մէջ (տես վերը* 421)*։*

---

(1) *Ինչպէս կը տեսնուի Գէորգ Ասլան ալ Կիբիստրան և Կիզիստրան կը նոյնացնէ։*

ունի յունարէն այս տողերը։ Թարգմանութիւնը կը պարտիմ Պ. Բ. Օհանեանի)։

Ս. Բարսեղի այս խօսքերը կարելի է առնել թէ՛ նիւթական կամ տառական և թէ՛ բարոյական կամ փոխաբերական իմաստով։

Կապադովկիա իր հրաբխային կազմովը արդարեւ ունէր ժանտ ժայթքումի վայրեր, ինչպէս նոյնիսկ Ստրաբոն կը նկարագրէ։

Հոն ցոյց կու տային շատ տեղեր խորխորատներ ուր կը կորսուէին ջուրերը և ճեղքուածքներ որոնք կը ծառայէին իբր դժոխոց անցքեր, որոնցմէ դուրս կը պոռթկային ժանտահոտ շոգիներ։

Այս անցքերը կը կոչուէին Charonia՝ այսինքն քարայրները Charonի կամ Պուղուտոնի, Դժոխոց աստուծոյն։

Աւանդութիւնը այս երկրին մէջ կը բնակեցնէր Տիւփէոս տիտանը որ բոցեր կը ժայթքէր իբր թէ (տես գործիս Ա. մասը, էջ 11–16)։

Ուրեմն կրնար Պոտանտոս կամ Պոտանտոն տառական իմաստով ալ գտնուիլ այնպիսի վայրի մերձ և արժանի ըլլալ Ս. Բարսեղի խօսքերուն և կոչուած ըլլալ դժոխք։

Տիար Բարսեղ Օհանեանի տեսութեամբ Ս. Բարսեղի խօսքերուն յոյն բնագիրին մէջ Պոտանտային տրուած χακὸν ածականը սովորական գործածութեամբ հայերէնի մէջ «գէշ» բառին իմաստը ունի, բայց ըստ տեղւոյն «զարշելի» «պիղծ» «աղտոտ» ալ կը նշանակէ։

Ս. Բարսեղ՝ Պոտանտոսը՝ Կապադովկիոյ սահմանագլուխը պաշտպանել կոչուած կարեւոր կիրճի մը սկիզբը անառիկ դիրք ունեցող այդ ամուր բերդը կը նկատէր զարշելի և պիղծ վայր մը, ո՛չ թէ ուրիշ պատճառով այլ անոր համար որ անիկա բաժնուած էր Կապադովկիոյ եկեղեցական թեմէն և այս պատճառով Կեսարիոյ ծերակոյտին մէջ պառակտում կար։

Արդարեւ պատմութենէն գիտենք թէ երբ Վաղես կայսրը Կապադովկիան բաժնեց երկու թեմերու, անոնցմէ մէկուն կեդրոնը ըրաւ Պոտանտոսը որ յետոյ Տիանայով փոխարինուեցաւ։

Եկեղեցական այս վէճն է որ իբր թէ առիթ տուած պէտք է ըլլայ Ս. Բարսեղի որ իր Աթոռէն բաժնուած թեմին կեդրոնը՝ Պոտանտոն որակէ պիղծ ածականով(1)։

Պոտանտոս՝ յետոյ Բիւզանդական շրջանին կոչուեցաւ նաեւ Բոզանթի կամ Պիզանթի(2), ինչպէս կը հաստատէ նաեւ Ռամսէյ, (տես Asia Minor, էջ 18, 348–9, 350)։

(1) Տիար Բարսեղ Օհանեան, կը կարծէ գտած ըլլալ Պիզու բառին լուծումը, խորհելով թէ Հայերը իւրացուցած են Ս. Բարսեղի —այնքան ազդեցիկ և յարգուած Սուրբին — պիղծ որակումը, և աւանդաբար անխախտ պահած են նզովեալ տեղւոյն իրենց ծանօթ «պիղծ» անունը, որ դարերու ընթացքին մեզի հասած է «Պիզու»ի վերածուած։ Եթէ Պիզու սոսկ Հայերու կողմէ գործածուած ըլլար արդէն խնդիր չէր մնար, սակայն Պիզու վաղուց ծանօթ էր։

(2) Այս Πιζάντη կամ Βυζάντη անունները կը մեկնաբանէ Պ. Բարսեղ Օհանեան հետեւեալ կերպով։ Պոտանտոսի միւս կողմը կը գտնուէին հին ժամանակներէ ի վեր ծանօթ Պօզի հանքերը. «Ես կը կարծեմ թէ, կ'ըսէ, իր վերջնական և ներկայիս ծանօթ Պօզանթի անունը Բիւզանդական շրջանին Βόζ և Αντη (Ֆրանսերէն Anti-l'opposé բառին իմաստով) միացումով կազմուած ըլլայ»։



Օրմանեան՝ անշուշտ հնչման նմանութեան վրայ հիմնուած Պիզուն և Պիզանթին նոյնացուցած է, ինչ որ պարզ դիպուած մըն է և Պիզուն բուն Պոտանտոն = Պիզանթին չէ, կամ չի կրնար ըլլալ ըստ Պ. Օհանեանի։

Պոտանտոս քաղաք մըն էր և կարեւոր քաղաք մը, իսկ Պիզուն պարզ ամրոց մըն էր, գիւղակ մը։

Հետեւաբար պէտք է խորհիլ թէ Պիզուն առաւելապէս կրնար Պոտանտոս ամուր քաղաքին շուրջը գտնուած բերդերէն մին ըլլալ, և ինչպէս կը կարծէ Պ. Բարսեղ Օհանեան Պիզուի բերդին կամ վանքին այսօրուան բուն տեղը ըլլալ Պօզանթիի մօտը՝ հին բերդի մը կամ վանքի մը աւերակները։

Սակայն այս տեսութիւնը կը փլի եթէ Կիբիստրան և Կիզիստրան նոյն չեն, հետեւաբար միշտ վերապահութեամբ կու տանք այս տեղեկութիւնները։

6. ԿԱԼՈՆՊԱՂԱՏ (Galombégad).— Այս անունով քաղաքի, բերդի, աւանի անուն ոչ մէկ տեղ յիշուած է, բացի Սմբատ և Ուռհայեցի պատմիչներէն։ Այնպէս որ դժուար է հաւատալ թէ իսկապէս այս անունով վայր մը գոյութիւն ունէր։

Պ. Բարսեղ Օհանեան, իրապէս հանճարեղ գիւտ մը —եթէ կարելի է այս բացատրութիւնը— կ'ընէ այս բերդին կամ պալատին (իմա՛ գղեակին) անունին համար երբ իրեն մեկնակէտ կ'առնէ Ս. Բարսեղի ճառին մէջ գործածուած «Դարոնիա» (Χαρώνεα) բառը, որ ապահովաբար յունական դիցաբանութեան մէջ ծանօթ Դժոխքի նաւավար Կարոնի վայրը իմաստով գործածուած պիտի ըլլայ։

Յունական Χάρων, Ֆր. Caron կամ Charon բառը Կալոն կամ Կաղոն ձեւով տառադարձուած կրնայ ըլլա՛լ։

Texierի Charonium բացատրութիւնը որ վերը յիշատակեցի, կերպով մը կ'արդարացնէ սա տեսութիւնը թէ Սմբատ պատմագիրի և Մատթէոս Ուռհայեցիի Կալոնպաղաս բառը մէկ արձագանգն է Ս. Բարսեղի առ Պոտանտոս արձակած վճիռին կամ անոր տուած այլանուան, որ իւրացուցուած է մեր պատմագիրներէն, առանց երբեք գործածական անուն մը ըլլալու։ Այս պարագային ներելի է նոյնիսկ մտածել թէ Կալոնպաղատը՝ Սմբատ և Մատ. Ուռհայեցի կը գործածեն իսկապէս Պոտանտոս = Պիզանթիի իբր համազօր։

Այս տեսութիւնն ալ թէական կը մնայ մասամբ։

«Կալոնպաղաս»ին վերջին մասը որոշ է թէ բերդի, աւանի, պալատի կամ վերջապէս գղեակի իմաստ կրնայ ունենալ, և դժուար չէ Կալոնն ալ Charonին հետ նոյնացնել, սակայն անոր վայրը ճշդել կարելի չէ որքան ատեն որ Պիզուի դիրքը որոշապէս ճշդուած չէ։

Միայն տրուած ըլլալով որ Պոտանտոս կամ Պոտանտոն նոյն էր այսօրուան Պօզանթիի հետ (Rams. Asia Minor, էջ 350) և կը գտնուէր ըստ Ս. Բարսեղի Charoniaի մը մօտը — տառական իմաստով առնելով Կեսարիոյ համբաւաւոր Հայրապետին խօսքերը — կարելի է հետեւցնել թէ Կալոն-Պաղատ պէտք է գտնուի Պիզանթիի մօտերը և եթէ Պիզուն անոր մօտն էր, ան ալ պէտք է հոն՝ այդ շրջանին մէջ գտնուէր։

7. ԿՈՄԱՆԱ (Comana).— Տեղը ճշդելու հարց գոյութիւն չունի այս քաղաքին համար, այլ միայն հարկ է ճշդել թէ այս անունով ծանօթ երկու քաղաքներէն ո՞ր մէկն է Դագիկ Արասեանի թագաւորին տրուածը, ըստ Վարդան պատմագիրի։ Պատմութեննէն գիտենք թէ Կոմանա անուամբ երկու քաղաքներ կան հնութեան մէջ, երկուքն ալ նուիրուած Մա դիցուհիի պաշտամունքին, մին 'ի Կապադովկիա իսկ միւսը 'ի Պոնտոս։ Նոյն դիցուհիին նուիրուած տաճար մը կը գտնուէր նաև 'ի Սերաստիա, բայց ոչ նոյն կարեւորութեամբ։

Երկու Կոմանաներէն մին կը կոչուէր Կոմանա Կապադովկիոյ: Աստը տեղը այսօր ալ կ'երեւայ Հաճընի և Կոկիսոնի (=Կէօքսուն) հիւսիսակողմը և կը կոչուի Կոմանիա՝ և կը գտնուի Աղիզիյէի հարաւակողմը։ Վարչականապէս Հաճընի ենթակայ գիւղ մըն է։ Ռամսէյ Կապադովկ-



Կոմանայի դրամ

(Մէկ կողմը ունի Մա դիցուհիին պատկերը եւ միւս կողմը լախտ մը (massue):



Կոմանայի Մա դիցուհիին տաճարին դրամներու վրայ եղած մէկ պատկերը

(Հռոմէական դրամ որուն միւս կողմը կայսեր պատկերը կը կրէ):

(Այս երկու հատ հազուագիւտ դրամները որոնք ունին Komanon արձանագիրը, վենի ցակ է թէ երկու Կոմանաներէն ուր դրոշմուած են եւ սակայն դրամագէտներ աւելի հաւանական կը նկատեն որ անոնք Պոնտոսի մէջ հատեալ են):
(Այս նկարները ձեռք բերուած են Պ. Բարսեղ Օհանեանի շնորհիւ):

եան Կոմանան կը նոյնացնէ Կոկիսոնին հետ։ Ալեքսանդրեան Անդրէաս վրդ. (Պատմ. Սեբաստիոյ, էջ 72) կը ճշդէ անոր տեղը Սար (Սէյհան) գետի վրայ Շէհիր տէրէսի կոչուած տեղը, Հաճընի մօտ։

Իսկ միւսը որ կը կոչուէր Կոմանա Պոնտական՝ այսօրուան Կիւմէնէկ գիւղն է, նշանաւոր իր աւերակներով, Թօգատի մօտ, երկու ժամ հեռու միայն անկէ (Հ. Ներսէս վրդ. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864, էջ 61)։

Դժուար է ճշդել թէ Վարդան վարդապետի յիշած Կոմանան Պոնտակա՞նն էր թէ Կապադովկեանը։

Տեսանք թէ Ռամսէյ, Զամիչեան եայլն, տրամադրութիւն ցոյց կուտան Ծամնդաւ մըն ալ Պոնտական Կոմանայի քով ենթադրելու ինչպէս կար Կապադովկեանին մօտ և փաւերական ընդունելու այս պատմագիրին հաւաստումով Գագիկ Արասեանի շնորհուած քաղաքներու



շարքին մէջ Ծամնդաւի, Ամասիոյ, Կոմանայի գոյութիւնը, սակայն ոչ ոմանք Լարիսա մըն ալ կայ յիշուած, հարկ կ'ըլլայ Լիկանտոնի մէջ յիշուած Լարիսայէն զատ Պոնտական Լարիսա մըն ալ ենթադրելու, ինչ որ բոլորովին անկարելի ալ չէ։

Սակայն թէ՛ Ծամնդաւ և թէ՛ Լարիսա անուններով կրկնակ քաղաքներու գոյութիւնը 'ի Պոնտոս թէական և կասկածելի ըլլալով, հաւանական է մտածել թէ Գագիկ Արասեանի հողերն ալ պէտք է Լիկանտոնի մէջ գտնուին։

Այս պարագային ալ ուրիշ դժուարութիւն մը կը կանգնի մեր դէմը։ Ամասիան ինչպէ՞ս կրնար իրեն տրուած քաղաքներուն մէջ ըլլալ, երբ այնքան հեռու էր Լիկանտոնի սահմաններէն։

Իմ տեսութեամբս Ամասիան գրչագրական վրէպ մըն է և հաւանօրէն պէտք է ըլլայ Աւարա կամ Ռամսէյի այլ ձեւով յիշատակածին պէս Ամարա, որ Ամասիայի վերածուած է գրչագիրներու սխալ ընդօրինակութեամբ։ Նոյնիսկ կարելի է մտածել թէ Ամարա անգործածելի և մոռցուած անունը գրիչները սխալ կարծելով սրբագրած են միամտութեամբ և ծանօթ Ամասիա անունը գրած են։

Նկատելի իրողութիւն մըն է թէ Եագուտ արաբ մատենագիրը՝ Ամասիան կը համարէ Հայկական բանակաթեմին կեդրոն։

Այնքան կարեւոր կեդրոն մը չէր կրնար տրուիլ Հայ թագաւորի մը իբր ճորտական երկիր։ Աշխարհագրական դիրքն ալ թոյլ չի տար մեզի այսպիսի մտածութիւն մը ունենալու։

Հետեւաբար պէտք է ընդունիլ թէ Գագիկ Արասեանի տրուած քաղաքներն էին Ծամնդաւ, Լարիսա, Աւարա կամ Ամարա և Կոմանա (Կապադովկիոյ) ամէնքն ալ իրարու մօտաւոր ու դրացի:

Այս տեսութեան ուժ կու տայ Միքայէլ Ասորիի շատ հետաքրքրական բացատրութիւնը որով Պոնտական Կոմանան կը զատէ Կապադովկեանէն այս վերջինը կոչելով «Կոմանա Հայոց» (տես էջ 161 և 320)։

Այս կերպով արդէն լուծուած կ'ըլլայ դժուարութիւնը և քիչ շատ համաձայնած իրերը և դէպքերը։

Բ.

## ՀԱՅ ՃՈՐՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՏԱՒՐՈՍԷՆ ԱՆԴԻՆ, ՄԻՆՉԵՒ ԵՓՐԱՏ

## ԵՒ

## ԱՆՈՆՑ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՊԱԿՑՈՒԹԻՒՆԸ

Այս ճշդումներէն յետոյ որոշապէս կրնանք գաղափար կազմել թէ Կապադովկիոյ մէջ կազմուած Հայ ճորտական կամ աւատական իշխանութիւնները ի՞նչ սահմաններ ունէին և ի՞նչ վայրեր կը գրաւէին։
Ինչպէս յստակօրէն կը պարզուի մէջ բերուած տուեալներէն «Սեբաստիոյ, Կեսարիոյ, Մարաշի եւ Մալաթիոյ միջեւ գտնուած բոլոր երկիրը,

այնքան կարեւոր անկէ անցնող ճամբաներուն պատճառով, ուրեմն Բիւզանդիոնէն վստահուած էր պաշտպանութեանը եւ բարեխնամութեանը այն քաղաքներուն որոնք թողած էին Մեծ Հայաստանը կայսրութեան մէջ հաստատուելու համար» (Laurent, «Byzance et les Turcs Seldjoucides», էջ 38)։

*Իմ համոզումովս՝ Բիւզանդական ծրագիրը որ Վասիլ Բ. երկնեց և գործադրութեան դրաւ, էր պետութեան պաշտպանութեան երկրորդ գիծը, այսինքն Սեւ Ծովէն հարաւ-արեւելեան անկիւնէն՝ (Խաղտիքէն) մինչև Իսոսի ծովածոցը քաշուած գիծը՝ թողուլ իրենց օրթոտոքս չըլլալու հանգամանքով նուազ վստահելի Հայերուն, օգտուելով Եփրատի ու Տաւրոսի բնական պատուարներէն։*

*Ասով միայն կրնայ մեկնուիլ* «դուքս Միջագետաց եւ Ստրատիկոս Կապադովկիոյ» *տիտղոսը որ տրուեցաւ Սենեքերիմ Վասպուրականի թագաւորին, որուն շնորհուած երկիրը իր այս տիտղոսէն հետեւցնելով բաւական ընդարձակ էր Եփրատէն մինչև Ալիս տարածուած ըլլալով։ Հոն ծրագրուած էր կազմել Հայ մեծ աւատապետութիւն մը իրեն ենթակայ ունենալով Հայ ճորտեր, որոնք իր օրինակով պիտի գային հաստատուիլ Բիւզանդական երկիրներու մէջ։*

*Գագիկ Բագրատունիի եղած առաջարկը՝ Մալաթիան ընդունելու համար փոխան Անիի, կը հաստատէ իմ այս տեսութիւնս։ Գագիկ չընդունելով, իբր անվստահելի Սենեքերիմի հողերէն աւելի արեւմուտք և աւելի կայսրութեան կեդրոնին և Բիւզանդական պահականոցներու մօտ՝ վայր մը ստացաւ։ Իսկ Գրիգոր Մագիստրոս որ ինքնաբերաբար իր հողերը թողած էր Վասիլ Բ.ի ստացաւ Միջագետքը՝ Սենեքերիմի հողերու քով և անոնց արեւելեան կողմը՝ գիւղեր և քաղաքներ, ի փոխարէն իր կայսեր թողած Բջնիի, Կայենոյ և Կայծոնի բերդերուն, և անոնց տոհմական ժառանգական իրաւունքը հաստատող ոսկի մատանի, միեւնոյն ժամանակ նաև Մագիստրոսի պատիւ* (1045) (*Հմմտ.* Լաստիվերտցի, *էջ* 61)։

*Գ. Մագիստրոս յետոյ մասնակցեցաւ կայսեր հրամանով* 1048*ին Թուրքերու դէմ մղուած պատերազմին, իբր Արեւելքի պաշտպանութեան յատկացուած հեծելազօրքին հրամանատար, ինչպէս կը կարծէ Լօռան* (Byzance et les Turcs, *էջ* 39) *հիմնուելով Արիստակէս Լաստիվերտցիի* (*էջ* 86) *վրայ, որ երբեք այս տեսակ պաշտօնի մը յիշատակութիւնը չ'ըներ։ Միայն որոշ է թէ Մագիստրոս, յետոյ աւելի ընդարձակ նահանգներու կառավարիչն էր դուքս կամ բդեշխ տիտղոսով։ Նոյնիսկ ինքն ինքզինքն կը կոչէ* «Վասպուրականի եւ Տարօնոյ եւ Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրոյ, Միջագետաց տէր, Մոնումախին Մագիստրոս, վեստ եւ դուքս» (*տես Կ. Կոստանեանց*, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, 1910, *Աղեքսանդրապօլ, էջ ԽԵ. և* 213, *Օրմանեան*, Ազգապատում, *էջ* 1228-9 *և* 1246)։ *Երբ Մագիստրոս մեռաւ՝* 1058*ին, Միջագետքի գեղեցիկ նահանգը յոյները թողուցին իր որդւոյն Վահրամի, մինչև իր կաթողիկոս ընտրուիլը* (1065)։ *Մինչ իր իշխանութեան ենթարկուած հողերուն մէջ երեւան կու գային ուրիշ ճորտեր, որոնք կը վարէին երկրորդական հրամանատարութիւններ և կը կրէին հին Հայ իշխանական ընտանիքներու անունները և ունէին իրենց յատուկ զինուորներու գունդերը։ Այսպէս պատմութեան մէջ կը հանդիպինք յիշատակութեան իշխանական տուներու որոնք իբր ճորտեր կը տիրէին Բիւզանդական Հայաս-*



*տանի զանազան վայրերուն, ինչպէս Սասունի*(1), *Անիի*(2), *Վասպուրականի*(3), *Երզնկայի*(4), *Կարսի և Թէոտոսուպոլիսի*(5), *Մանազկեր-*

---

(1) *Ինչպէս Մուշեղի որդի Թոռնիկը որ փախուստի մատնեց Թուրքերը երբ անոնք* 1058 *Հոկտեմբերին Մելիտինէի աւարառութենէն յետոյ կը վերադառնային այս մեծ քաղաքէն մեծ աւարով մը և անոնց ձեռքէն առաւ բոլոր կողոպուտը* (Laurent, Byz. et les Turcs, *էջ* 40)։

(2) *Անիի մէջ, Գագիկի մեկնումէն յետոյ Հայ իշխաններ դրուած են, որոնցմէ կը յիշատակուի Կոստանդին Տուկասի ատեն* (1059-1066) «Բագրատ Մագիստրոս եւ Արեւելքի Կատապանը» *բնիկ տանուտէրներով, որոնցմէ մէկը եղաւ հիւպատոս և միւս երկուքը՝* Spatharocanditat*ներ։ Այս հայերը ունէին իշխանութիւն պակսեցնելու երկրագործական բերքերու, զանազան փոխադրութեան բաժերու, սպանդի յատկացեալ արջառներու վաճառման վրայ դրուած տուրքերը* (Brosset. Voyag. *Ա. էջ* 95)։ *Բիւզանդացիք Անիէն* 1054-1056*ին տուրք մը կ'առնային* (*Նոյն*, «Ահարոն Պուլկարի արձանագրութիւն»)։ *Բագրատ, ըստ յունաց, ունէր այնքան ազդեցութիւն պատրաստելու համար Անիի գրաւումը Թուրքերէն։*

(3) *Թոռնեան գաւառին մէջ կը յիշուի* «մեծ իշխան Հայոց Խաչիկ» (*Ուռ. էջ* 105) «խուլ» *մականուանեալը, որ անվրէպ այն տեղին կառավարիչը չէր ըստ* Brosset-*ի* (Le beau, *ԺԴ. էջ* 288) *և* Schlumberger*ի* (Epo. III. *էջ* 480) *թէեւ ոեւէ բնագիր թոյլ չի տար այսպէս վճռական կերպով արտայայտուելու, ինչպէս իրաւամբ դիտել կու տայ* Laurent (*տես* Byz. et les Turcs, *էջ* 39) *վասնզի յոյները կը վարէին զօրքերը Վասպուրականի մէջ երբ ան սպանուեցաւ Հերի և Սալամաստի Թուրքերէն* 1042*ին։ Բայց ունէր բաւական հեղինակութիւն և իր որդիները Հասան և Ճնճղուկ* իրենց կազմած զունդերովը *Եւրոպայի մէջ կը ծառայէին Միքայէլ կայսեր* (*Նոյն*) *«անշուշտ Բիւզանդական քաղաքականութեան համաձայն օր մ'իրենց աշխարհը կառավարելու համար՝ կայսեր հաւատարիմ ծառայութեան մէջ մնալով»* (*Դուրեան*, Ազգ. Պատմ. *էջ* 385)։ *Անիկա փաստ մըն է թէ Վասպուրականի մէջ — որ զրկած էին իր թագաւորէն — մնացած էին Հայ իշխաններ, որոնք իբր ճորտեր կը պահէին իրենց տանուտիրական հողերը։*

(4) *Յոյները հաստատած էին Իվանէն՝ Լիպարիտի* (1048*ին Թուրքերու գերի ինկած*) *որդին,* «որում տուեալ էին ի պարգեւ՝ տեղիս բնակութեան զմեծ աւանն Երիզայ 'ի գաւառին Հաշտենից, եւ որ շուրջ զնովաւ դաստակերտք» (*Լաստիվերտցի, էջ* 123, *Հմմտ. Նաեւ Ատտալիատէս, էջ* **111**)։ *Իվանէ երբ Բիւզանդիոնի գահուն շուրջ պայքար ծնունդ առաւ, դաւաճանեց և Թուրքերը առաջնորդեց Կոստանդին Տուկասի ատեն* (1059-1066) (*Լաստիվերտցի, էջ* 124-125. Finlay, *Բ. էջ* 20. Lebeau, *ԺԴ. էջ* 437 *և* Saint Martin, *Բ. էջ* 230)։

(5) *Այս երկու քաղաքներուն իբր հրամանատար կը յիշուի Գրիգոր Բագուրիանոս, ծագումով վրացի կամ աւելի Վրաստանցի հայ* (Laurent, Byz. et les Turcs. *էջ* 42) *և մեծ ընտանիքէ մը* (*Աննա Կոմնէն, Բ. գլ.* 4, *էջ* 96) *որուն հայրը* «Իշխանաց Իշխան» *էր* (Typicon, *էջ* 43)։ *Ան եղած էր Սեբաստոս, վերին հրամանատար Արեւելեան գունդերուն և իր կեանքը անցուցած էր կռուելով յունաց համար Ասիոյ և Եւրոպայի պատերազմի դաշտերուն վրայ և պայքարած յաղթականօրէն ընդդէմ Նորմաններու* Robert Guiscard*ին և ինկած Բէչէնէկներու դէմ մղուած կռիւին մէջ։*

տի(1), և թերևս շատ ուրիշ վայրերու, և կը ներկայացնէին առաջին պաշտպանութեան գիծը Բիւզանդական տիրապետութեան, որուն սահմանները Հայաստանի մէջ ունէին չափազանց երերուն և անհաստատ վիճակ մը։

Նոյնն էր վիճակը նաև Տաւրոսէն Եփրատ տարածուած երկիրներուն և Ասորիքի մէջ։ Բիւզանդացիք կորսնցուցած էին Հալէպը 1060ին, բայց տակաւին կը պահէին Կիլիկիան, Անտիոքը, Պիրը (Պիրէճիք Եփրատի վրայ) և նոյնիսկ Եփրատէն անդին՝ Ուռհան կամ Եդեսիան, որոնց կը տիրէին կարգ մը իշխաններ, որոնք կը համարուէին ճորտերը Բիւզանդական կայսրութեան, որ յաճախ անոնց իշխանութիւնները ակամայ ճանչցած էր, վասնզի Թուրքերու յարձակումները կը տասանորդէին կայսերական հեղինակութիւնը Կ. Պոլիսէն հեռակայ այդ երկիրներուն մէջ, ուր Հայոց զինուորական ծառայութիւնը կը դառնար աւելի քան երբեք անհրաժեշտ և կը պարտաւորէր կայսրութիւնը աչք գոցելու կարգ մը բախտախնդիրներու միտումներուն և թոյլ տալու որ պարագային համաձայն անոնք անպատիժ գործեն անպատկառ աւազակութիւններ, կամ յարուցանեն յեղափոխութիւններ և կամ վերջապէս միանան կայսրութեան թշնամիներուն (Laurent, «Byz. et les Turcs», էջ 73-74)

Այնպէս որ յաճախ Բիւզանդիոն ակամայ համակերպած է կազմութեան Հայ ճորտ իշխանութիւններու, որոնք Հայ բախտախնդիրներ յաճախ ինքնաբերաբար կը կազմէին, բաց ի անոնցմէ զորս կայսրերը իրենք կազմած էին, ինչպէս Սենեքերիմի և երկու Գագիկներու իշխանութիւնները։

Անշուշտ անոնց մէջ կային նաև Հայեր որոնք իրենց մատուցած ծառայութիւններուն համար ստացած էին այդ կալուածները իբր աւատներ։ Այսպէս կը յիշուին Եդեսիոյ(2), Անտիո-

(1) «Զօրապետ քաղաքին» և «Իշխանն Հոռոմոց» կամ պարզապէս «քաղաքին իշխանն» էր Վասիլ Հայը, Ապուքապի որդին, որ յաղթականօրէն վանեց Տուղրիլ պէկի յարձակումը այս քաղաքին վրայ 1054ին (Լաստիվերցի, էջ 106, Ուռ. էջ 141–145. Ատտալիատէս, էջ 46. Կեդրենոս, Բ. էջ 591)։ Վասիլ 1064–1065ին իբր «զօրագլուխ» վարեց հրամանատարութիւնը յոյն բանակին երբ ան Ուզերու դէմ կռուի կ'երթար Դանուբի եզերքը (Ուռ. էջ 182–3. Ատտալիատէս, էջ 83. Սկիլիցէս, էջ 654) և գերի ինկաւ։

(2) Եդեսիոյ կուսակալ կը յիշուի Ապուքապ, «որ յառաջ վրանապան էր լեալ Դաւթի Կիւրապաղատին Վրաց» (Ուռ. էջ 64) և Գէորգ Բարազբատողէի, որ հիմնադիրն էր Աթոս լերան Իվերոն վանքին (Schlumb. Epop. Գ. էջ 102 և Կեդրենոս Բ. էջ 520)։ Ռոմանոս կայսեր բանակին մէջ էր 1030ին 'ի Սուրիա, երբ «ազդ արարեալ թագաւորին զնենգութիւն զօրացն» (Ուռ. նոյն) ստացաւ Եդեսիոյ հրամանատարութիւնը, Մանիակի իբր յաջորդ (նոյն, էջ 73 մինչ Կեդրենոս, Բ. էջ 512 կը հաւաստէ թէ անոր յաջորդը եղած է Լեւոն Լեպանտոռիոս)։ Ապուքապի «շինեալ էր եւ սին առեալ զամենայն զաւառն» Ուռ. էջ 260)։ Իրեն յաջորդած էր Վասիլ՝ Մանազկերտի իշխանը որ Ուզերու ձեռքը գերի ինկած էր (տես վերը)։ Ան ազատելէ յետոյ գնաց Եդեսիա, իր հօր քովը և յաջորդեց անոր (1077-1083) (Ուռ. 259-266) և հոն մեռաւ (նոյն, 268)։



քի(1), Կիլիկիոյ(2), Անտրիունի(3), Այնթապի կամ Տլուքի(4) և այլ Հայ իշխանները։ Ասոնք թերևս այնքան հեռու պետութեան կեդրոնէն և այնքան ենթակայ բարբարոսներու յարձակման, և զուցէ կզզիացեալ՝ չէին ներկայացներ շատ կանոնաւոր պատնէշ մը և թերևս ասոր համար Բիւզանդացիք ջանացին կազմել Փոքր Ասիոյ արևմտեան կողմը նոր զօրաւոր պատուար մը, Սեբաստիոյ մէջ հաստատուած Վասպուրականի Հայ թագաւորին աւատապետութեան տակ, որ միութիւն մը պիտի կազմէր թէ՛ այս հեռաւոր ճորտերու հետ և թէ՛ իր մէջ ընդունելով Հայաստանէն գաղթող նորանոր տանուտէրներ, պիտի դառնար զօրաւոր արգելք մը բարբարոսներու դէմ, քանի որ անոնք օրէ օր կ'առաջանային։ Արդարև ինչպէս ինչ ինչ յիշատակութիւններէ կը

(1) Անտիոքի կառավարչութիւնը ստացող առաջին Հայը թերևս է Արաս, եղբայրը Կարսի և Թէոդոսուպոլիսի հրամանատար Գրիգոր Բագուրիանոսին (տես վերը, էջ 437)։ Արաս հոն ունէր կալուածներ։ 1065ին հոն կը գտնենք Ուսէր Մագիստրոս կամ Դուքս տիտղոսը։ «տուրկ» կամ տուքս տիտղոսով (Ուռ. էջ 188), Պեխտ կամ Վեստ Խաչատուր Անեցի Հայաստանցի կամ Հայ ուշիմ, քաջ և երևելի անձը որ Ռոմանոս կայսրէն 1068ին ստացաւ Անտիոքի հրամանատարութիւնը (Ատտալիատէս, էջ 137 և 172. Սկիլիցէս, էջ 684. Զոնարաս, էջ 705. Փսելլոս, էջ 284)։ 1069ին ղրկուեցաւ գրաւելու Մամեստիան, արգիլելու համար անցքը Թուրքերուն որոնք կը դառնային Իկոնիոնի կողմէն։ Թողուց որ անոնք փախին (Ատտալիատէս, էջ 137 և Սկիլիցէս, էջ 684)։ Խաչատուր հաւատարիմ գտնուեցաւ Ռոմանոսի (1071-72) պաշտպանելով զայն Տուկասի դէմ։ Կորոյս իր զօրքերը, իր պաշտօնը և իր ազատութիւնը, բայց ոչ իր կեանքը (Ատտ. էջ 174. Փսելլոս, էջ 284–286. Պրիեննիոս Ա. էջ 24. Սկիլիցէս, էջ 703)։ Իր մահուան թուականը յայտնի չէ։ Կը թուի յաղթուած ըլլալ Անդրոնիկ Տուկասէն, 1071էն յետոյ նոյն իշխանութեան մէջ իրեն յաջորդած են ուրիշ Հայեր, ինչպէս Գր. Մագիստրոսի որդին՝ Վասակ Պահլաւունի, որ սպանուեցաւ 2 Մարտ, 1078ին և «ազատազունդն Վասակայ կոչեցին զՓիլառտոսն եւ տան զԱնտիոք ի ձեռն նորա» (Ուռ. էջ 256)։ Իբր նոյն քաղաքին իշխան կը յիշուի նաև Ալփարոնտաս (Իպն էլ Աթիր) որ հաւանօրէն նոյնն է Փիլարտոսի հետ որ յափշտակեց Անտիոքի տիրապետութիւնը (Ուռ. Նաև Աննա Կոմնենոս, Դ. էջ 300. Michel le Syrien Գ. էջ 173)։

(2) Կիլիկիոյ մէջ Տարսոն և ուրիշ քաղաքներ նոյնիսկ 1071էն առաջ ունէին թերևս Հայ տանուտէրներ (seigneur)։ Այսպէս կը յիշուի բնիկ Անեցի, Վեստ Ապլղարիպ, նախապէս Վասպուրականի դուքս, Խաչիկի թոռը և Հասանի որդին, որ Տարսոնի կառավարիչն էր (Ուռ. էջ 263 և Սամուէլ, էջ 453), իր ձեռքին տակ ունենալով նաև Մամեստիա (=Մեսիս) և Ատանա քաղաքները մէկ կողմէն, իսկ Լամբրոն և Պապեռոն բերդերը միւս կողմէն (Վարդան, էջ 106)։ Ասիկա իր աղջիկն ամուսնացուց Գագիկ Բագրատունիի որդւոյն Դաւիթի հետ։

(3) Անտրիուն մերձ ի Մարաշ, 1078–1079ին ունէր Էպիխտ անուն «իշխանն Հայոց» «այր քաջ եւ հզօր պատերազմող, ի տանէն Շիրակայ» (Ուռ. էջ 257)։

(4) Տլուք՝ Ծովք գիւղակին հետ տրուեցաւ Ներսէս Շնորհալիի մեծ հօրը Ապիրատին, որ Գր. Մագիստրոսի փեսան էր։

հասկցուի Սենեքերիմով հիմնուած ճորտ իշխանութեան սահմաններուն մէջ հաստատուած են իբր աւատներ ուրիշ իշխաններ, ճորտական դրութեամբ և աւատապետական կարգերով։ Ասոնց թիւը թերեւս մեր գիտցածէն աւելի է։ Մեր պատմիչները՝ հազիւ յիշատակած են երկու Հայ թագաւորներու՝ Անիի Գագիկ Բագրատունիի և Կարսի՝ Գագիկ Աբասեան թագաւորներու փոխադրութիւնը Սենեքերիմի աւատապետութեան սահմանները, և երկու ուրիշ տանուտէրներու անունները, որոնք նոյն սահմաններուն մէջ ունէին ճորտական իրաւունքներ։

Ասոնցմէ առաջինն էր Դաւիթ՝ Սենեքերիմի որդին, որ ինչպէս տեսնուեցաւ 1025ին ի վարձ իր յոյժ կարեւոր մէկ ծառայութեան ստացաւ իբր «օժիտ» կամ բացառիկ նուէր որոշ կալուածներ, որոնք յետոյ 1065ին Կարսի թագաւորին շնորհուեցան։

Իսկ բոլորովին անցողակի կերպով կը յիշուի Մուտառասունի(1) մէջ իշխող Գագիկ իշխան մը որդի Գուրգէնի (Ուռ. էջ 247) որուն ինչպէս այս իշխանութեան տիրացած ըլլալը յայտնի չէ։

Գագիկ հաւանօրէն որդիներէն մին էր Սենեքերիմ թագաւորին եղբօրը Գուրգէնի, որ բացի իրմէն ունէր նաև Դերենիկ և Աշոտ անուն երկու ուրիշ որդիներ (տես Վարդան, էջ 92).

Դիպուածով և պատահօրէն յիշատակուած այս տանուտէր-իշխանին պէս հաւանօրէն կային շատեր, նոյնիսկ Արծրունի տոհմին պատկանող որ Գուրգէնի որդի Գագիկի պէս ունէին զանազան տեղերու մէջ ճորտական իշխանութիւններ, որոնք չեն յիշատակուած։

Շատ հաւանական է օրինակի համար մտածել թէ այս Գագիկին պէս Սենեքերիմի հետ Վասպուրականը լքող իր միւս եղբայրները՝ Դերենիկ և Աշոտ եւս ստացած էին հողեր և կալուածներ։

Այս հողատէր-իշխաններու թիւը շատցնելու աշխատած են Բիւզանդացիք։ Վասիլ Բ.էն (✝1025) մինչև Ռոմանոս Դիոգինէս (✝1071) սահող հազիւ յիսնամեայ ժամանակամիջոցին մէջ, երբ հետզհետէ աւելի սպառնալից կը դառնար թրքական վտանգը։ Մասնաւորապէս Ռոմանոս Դիոգինէս որ մտադրած էր Թուրքերը Բիւզանդական երկիրներէն դուրս վանել, յատկապէս քաջալերած ըլլալ կը թուի կազմութիւնը այդ իշխանութիւններուն որոնք մեծ մասամբ իր պարգեւա-

(1) Օրմանեան անծանօթ վայր մը նկատած է Մուտառասունը, որ Գագիկ Աբասեանի սահմաններուն մէջ վանք մը և բնակավայր մը ըլլալ կ'ենթադրէ «ամբոխալից կեդրոններէ հեռու» (Ազգապատում, էջ 1288)։ Մուտառասուն հաւանօրէն նոյնն է արդի Մուտառարնի կամ Մէնտէրէսնի հետ, որ կը գտնուի Կեմէրէկի մօտերը և այսօր աննշան գիւղ մըն է, նոյնիսկ շատոնց դադրած հայաբնակ ըլլալէ։ Laurent (Byz. et les Turcs, էջ 86) կը կարծէ թէ Moudaçaroun կը գտնուէր Թեսունի մօտ, և նստոցն էր 1072-73ին Գուրգէնի որդի Գագիկ իշխանի որ աւատ մըն էր իր կարգին։ Սակայն չէ ճշդած թէ ո՞վ էր այս Գագիկը։ Օրմանեան կ'ենթադրէ թէ Գագիկ Աբասեանի վրայ է խօսքը քանի որ անոր պաշտպանութեամբ ընտրուած էր Գրիգոր Վկայասէր կաթողիկոս և կը նստէր անոր նստոցը՝ Ծամնդաւ։ Սակայն այդ պարագային պատմիչը պէտք չունէր յիշատակելու անունը այս իշխանին ըսելով թէ անոր քովը եկաւ, վասնզի արդէն անոր քովն էր 'ի Ծամնդաւ։



տրութեամբ հիմնուած էին։ Նոյնպէս ինքն էր որ բազմացուց Հայ զինուորական հրամանատարները. ինքն էր որ Հիերապոլսոյ(1) մէջ հաստատեց Ապուքապը, որ արդէն տէր էր Եդեսիոյ (Ատտալիատէս, էջ 116), Անտիոք ղրկեց Խաչատուր Արշակունին, և վերջապէս ինքն էր որ Վերին Ասորիքի հրամանատարութիւնը յանձնեց Փիլարտոս Հայ զօրավարին որ կայսեր ձախողութենէն յետոյ 'ի Մանազկերտ, իր այս դիրքը օգտագործեց հիմնելու համար պետութիւն մը Կիլիկիոյ և Ասորիոյ մէջ։

Ռոմանոս ուրեմն շատ լաւ ըմբռնած էր Հայոց կարեւորութիւնը և անոնց գործակցութեան անհրաժեշտութիւնը, ուստի հակառակ անոր որ յոյները՝ ինչպէս ինքը՝ կայսրը, կրօնական հակառակութեամբ՝ կասկածով և ատելութեամբ լեցուած էին Հայոց դէմ, դարձեալ զանոնք խոստումներով և կալուածներով կը շլացնէին, ինչպէս Լաստիվերտցի (էջ 171) բաւական յատկանշական բառերով կը բացատրէ, ըսելով թէ «Բայց թագաւորն Յունաց անպատճառ եւ անտեղեակ՝ լի ցասմամբ կայր ընդ զօրս Հայոց եւ ընդ ազգն, եւ ընդ ակամբ հայէր ի նոսա, բայց իբրեւ ետես միամտութեամբ զպատերազմն եւ զքաջ արանցն զնահատակութիւնն, որ ոչ զանգիտէին ի կորովի աղեղնաւորացն պարսից, այլ արութեամբ ընդդէմ կային հանդիպին, եւ ոչ զթիկունս դարձուցանէին, թէպէտեւ բազումք 'ի սիրոյ թագաւորին բաժանեցան, սակայն միամտութեամբ նոքա զմահ յանձն առին. զի եւ զկնի մահու՝ միամտութեամբ քաջութեան փայլելոյ յիշատակ թողցի. **ապա սէրս անդէպս ցուցանէր եւ պարգեւս անձեռնմխելիս խոստանայր**»:

Վերջին բառերէն որչափ կարելի է հասկնալ Ռոմանոս կը խոստանար Հայոց «ԱՆՋԵՌՆՄԽԵԼԻ ՊԱՐԳԵՒՆԵՐ» կամ «ԿԱԼՈՒԱԾՆԵՐ» որոնք ուրիշ բան չէին կրնար ըլլալ, եթէ ոչ ճորտական ստացուածքներ։ Միայն նշանակելի է —ինչպէս կը դիտէ Laurent, (Byz. et les Turcs, 43)— Ռոմանոս իր ընտրած և կարգած Հայ հրամանատարները առած է երկրորդական անձերէ և չէ տուած զանոնք Հայաստանի նախկին թագաւորներուն։

Այս զօրավարներուն մէջ չկայ մէկը որ ցոյց տուած չըլլայ կերպով մը բաւական զինուորական տաղանդ, կռուելու համար աւելի աւարառութեան և կողոպուտի քան կարգի և կանոնի ընդունակ Թուրք բանակներուն դէմ (Նոյն, էջ 43)։

Ուրեմն Ասիոյ Բիւզանդական սահմանագլուխները պաշտպանելու համար կարող զօրավարներ չէին պակսիր։ Արդ երբ այդ սահմանագլուխը օժտուած էր պաշտպանողական լաւ հաշուած և դիմադրութեան կարող կազմակերպութեամբ մը ի՞նչպէս եղաւ որ Թուրքերը կրցան զայն անցնիլ վերջնականապէս 'ի Մանազկերտ 1071, Օգոստոս 19ին միակ կարեւոր յաղթանակէ յետոյ։

Ասիկա անըմբռնելի գաղտնիք մը պէտք չէ թուի։

Բիւզանդական կրօնական քաղաքականութիւնը և նենգութիւնը որ իր հպատակներուն նկատմամբ գործադրած էր կայսերական կեդրոնը, իր կրօնամոլ խորհրդականներով, տարբեր արդիւնք մը չէր կրնար տալ։

(1) Այժմ Փամպուգ Գալէսի, Կիլիկիոյ մէջ, ըստ ոմանց Կոռիկոսի կամ ըստ այլոց Լաւոդիկէի մօտ։

Մեծ հայրերը ազոխ կերած էին և թոռներուն ակռաներն կ'առնըւէին։

Դարերու սխալը կը տուժէր Բիւզանդիոն և կայսրութեան հիմերը կը սասանէին և քաղաքակրթութեան որորանը զոհ կ'երթար բարբարոսութեան և կատարեալ վայրենիութեան ի. բարբարոս Թուրքերը կու գային իրենց վրանները լարել Հռոմէական անցեալ փառահեղութեան աւերակներուն վրայ, աջակցութեամբ հալածուած քրիստոնեաներու, որոնց շարքին առաջին տեղը Հայերունն էր։

## Գ.

## ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ՀԱՅ ՃՈՐՏ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԿԵԱՆՔԸ

Կապադովկիոյ Հայ ճորտ պետութիւնները, որոնք Հայ նախկին թագաւորներու և այլ Հայ իշխաններու գլխաւորութեամբ կազմուած էին վերոգրեալ պայմաններուն և ճշդուած սահմաններուն մէջ, հազիւ վաթսուն տարիներու կեանք մը ունեցան (1020–1080)։

Հայերը՝ որոնք այնքան միամիտ խանդավառութեամբ մը այս փոխադրութիւններուն մէջ փրկութեան կայանի հասնիլ կարծած էին, յուսալով գտնել Բիւզանդական երկիրներու մէջ բարբարոսներուն դէմ պաշտպանութիւն և քրիստոնեայ կայսրութեան մը սահմաններուն մէջ իրենց կրօնքին և ազգութեան համար ապաստան մը, յուսավրէպ անէացան, իրենց անկախութիւնը ձեռք բերելու համար յուսահատ փորձ մը ընելէ յետոյ։

Անոնք շատ շուտով հասկցան թէ իրենց Բիւզանդական կայսրութեան հովանիին տակ կազմակերպուելու և իրենց համար նոր կեանք մը ստեղծելու ձգտումը, պատրանք մըն էր, և յոյները՝ չէին խրատուած անցեալին տխուր փորձառութենէն և միշտ առաջին նպատակէտ ունէին Հայերը օրթոտոքսացնել։ Հետևաբար կարելի չեղաւ համերաշխ գործունէութիւն մը երկու քրիստոնեայ ազգերու մէջ պետութեան այս ճգնաժամին, երբ ամէնէն աւելի պէտք էր իրենց գործակցութիւնը։

Օրթոտոքս եկեղեցիին միութենէն դուրս մնացած Հայերը, միշտ նկատուեցան անհաշտողական ձգտումներ ունեցող տարր մը և ազգային միութենէն դուրս մնացած ցեղ մը։ Կրօնապէս արտակեդրոն և միութենէն դուրս մնացած բնակիչներ ունեցողներ այս ճորտ իշխանութիւնները քաղաքական գետնի վրայ աւելի զօդուած և միացած չէին պետութեան կեդրոնին հետ (Laur. Byz. et les Turcs, 73) վասնզի պահած էին իրենց պետերը և թագաւորները, որոնք իրարու հետ կը կնքէին կայսրութեան հողերուն վրայ, ընտանեկան դաշինքներ։ Այսպէս Գագիկ Բագրատունի կ'ամուսնանար Սենեքերիմ թագաւորի Դաւիթ որդւոյն աղջկան հետ (Ուռհայեցի, 193 և Լաստիվերցի, 62) և իր տղան՝ Տարսոնի Ապուլղարիպ իշխանին աղջկան հետ (Ուռհայեցի, 263), և կը կազմէին խնամութեամբ՝ միութիւններ։ Եւ եթէ պէտք է հաւատ ընծայել Մատթէոս Ուռհայեցիի խօսքերուն Հայերը նոյնիսկ կը յան-



դգնէին կայսեր առջև յայտարարել իրենց յաւակնութիւնը կախում ունենալու Անիի իրենց նախկին թագաւոր Գագիկէն, որ այն ատեն Բիւզանդացւոց համար պարզ կայսերական պաշտօնատար մըն էր, եթէ աքսորական մը չէր Կապադովկիոյ և Տաւրոսի մէջ։

Արդ, Ուռհայեցի կը պատմէ թէ ինչպէս երբ Կոստանդին Դուկաս կայսրը և «պատրիարքն եւ ամենայն կղերիկոսքն եւ ամենայն դասք ներքինեացն լծակից լեալ չարաշունչ եւ պիղծ խորհրդոյ անօրէն թագաւորին, եւ ամենայն մեծամեծ իշխանքն Հոռոմոց ձեռն տուեալ խաւարային խորհրդոցն, . . . կամէր . . . բառնալ զՀայոց հաւատոյ դաւանութիւն եւ խորհէր եղծանել ապականութեամբ զհաւատս Ս. Լուսաւորչին Գրիգորի եւ . . . զիւր դիւայլոյուկ եւ զխառնամինոր եւ զթերակատար զհաւատս հաստատել 'ի Հայս . . . եւ զլուսաւոր հաւատս խաւարեցուցանել եւ զճշմարտութիւնն ընդ ստութիւն փոխել, որպէս եւ սովորք են Յոյնքն ... առաքեաց ... ի Սեբաստիա քաղաքն, եւ կոչեաց զորդիսն թագաւորաց Հայոց զԱտոմ եւ զԱպուսահլ գալ ի Կոստանդինուպոլիս» (191–2):

Հոն Կոստանդին Դուկաս կայսրը կը յայտնէ իր «չար խորհուրդն» (էջ 193) և կ'ըսէ թէ «Հրաման է ի թագաւորութեանս մերում՝ զի դուք եւ ամենայն իշխանք Հայոց աշխարհին առնոյք յանձին ձեր զկնունք հաւատոյ ազգիս Հոռոմոց»:

Ատոմ և Ապուսահլ՝ կայսեր կու տան պատասխան մը որ արդարև նշանակելի է և չափազանց յանդուգն։ Անոնք կ'ըսեն «մեք առանց թագաւոր Գագկայ Աշոտոյ որդւոյն ոչ ինչ կարեմք առնել, զի նա այլ քաջ է եւ թագաւոր եւ մեր իշխեայ. առաքեա եւ կոչեա զնա այսր զի եթէ մեք առանց նորա իրք առնեմք, նա զմեզ հրով այրէ ի գաւառն մեր» (Մատթ. Ուռ. 193)։

Ուրիշ առթիւ մըն ալ Գագիկ Բագրատունի յանդգնած էր կայսեր առջև ըսելու. «Տէր եւ թագաւորն ես եմ տանն Հայոց, եւ ահա ես ոչ տամ զՀայս 'ի ձեռս . . .» (Մատթ. Ուռ. 111)։ Հետևաբար հեռու էին յոյները իրենց ակնկալած համակերպութիւնը գտնելէ և Հայերը՝ իրենց երեւակայած հանգիստը, և երկուստէք յուսախաբ՝ իրար ատելէ չդադրեցան և արդիւնքը եղաւ քայքայում թէ՛ Հայոց և թէ՛ Յունաց համար, որոնք իրարու հետ անկեղծ վերաբերում մը չունեցան, և իրարու դէմ դաւեցին։ Բայց արդարութեան համար պէտք է ըսել թէ նախապէս տեղափոխուած Հայ թագաւորները անկեղծ հաւատարմութեամբ մը կատարած են իրենց պարտականութիւնը հանդէպ գերիշխան պետութեան։ Կայսեր դէմ ապստամբած Նիկեփոր Ծռվիզի սպանութիւնը Դաւիթի ձեռքով (տես էջ 414) ասոր ամէնէն պերճախօս փաստն է, իրողութիւն որ սակայն չկրցան գնահատել յոյները, և յետոյ սկսան նեղել և հալածել Հայ այդ իշխանութիւնները։



ԿՈՍՏԱՆԴԻՆ Թ. ՄՈՆՈՄԱԽՈՍԻ ԴՐԱՄ
(1042 – 1055)

Սենեքերիմի (+1025) և իրեն յաջորդող որդւոյն Դաւիթի (1025–1035 †) իշխանութեան շրջանները հազիւ անցած, երբ Ատոմ և Ապուսահլ (1035–1080?) որդիները Սենեքերիմի՝ իշխանութիւնը կը վարէին, Միքայէլ Պափլագոնացի կայսրը (1034–1041) առաջին քայլը առաւ հալածանքին կարեւորութիւն տալով Հայ վարձկան գունդերու ա՛յն ամբաստանութեան թէ ապստամբելու մտադրութիւն ունէին Ատոմ և Ապուսահլ (Ուռ. 96)։ Ուստի կայս-

րը Սեբաստիոյ վրայ բանակ մը ղրկեց։ Շապուհ զօրավար ուզեց զինու զօրութեամբ դիմադրել բայց Ատոմ խոհեմութիւն համարեց զէնքի չդիմել և Ապուսահլ եղբօրը հետ գնաց Կ. Պոլիս և կայսեր ներկայացաւ և յաջողեցաւ անոր կասկածը ցրուել (Ազգապատում, 1244–5. Դուրեան, Ազգ. Պատմ. 384)։

Հայահալած քաղաքականութեան գլխաւոր արտայայտիչը եղաւ կարճամիտ Կոստանդին Թ. Մոնոմախոս (1042-1055) որ որքան բռնական նոյնքան նենգ, դաւաճան և անուղղամիտ միջոցներով վերջ տուաւ Անիի Գագիկ թագաւորին իշխանութեան, և զայս փոխադրեց Պիզու (1045)։

Աքսորական թագաւորը երբեք չմոռցաւ այս վատութիւնը ուստի երբ «կայր դեղերեալ ... պանդխտեալ ի մէջ անողորմ եւ չար ազգին Յունաց : ... Ուր հասանէր Գագիկ, նեղութիւն մեծ արկանէր ի վերայ ազգին յունաց պէսպէս խայտառակութեամբ վասնզի որպէս թագաւոր անարկութեամբ կայր ի մէջ նոցա եւ Հոռոմոց, բայց սաստիկ սուգ ունէր 'ի սրտի իւրում վասն հայրենի աթոռոյն իւրոյ, զոր նենգութեամբ յափշտակեցին աստուածուրաց եւ նենգաւոր ազգն հերետիկոսաց» (Ուռ. 112):

Խաբուած թագաւորին այս ատելութիւնը որ չափազանց բնական էր, նկատելի է որ յոյները աւելի կը խորացնէին, երբ Հայոց թագաւորութիւնը կործանելէ յետոյ ձեռք կը դնէին նաև Հայոց կաթողիկոսութեան վրայ։

Պետրոս Գետադարձը (1019–1058) — որ Յունաց ձեռքը անպիտան գործիք մը հանդիսացած էր Գագիկ Բագրատունին Անիէն հեռացնելու և քաղաքը անոնց յանձնելու համար — յոյն կուսակալը՝ Կամենաս ո՛չ միայն «ոչ բաս առաջին պատւոյն մեծարէ» (Լաստիվ. 53) այլ նաև «ակամբ զրով ամբաստանն լինել առ թագաւորն» (Նոյն) և վերջապէս զայն կը հեռացնէ Անիէն և կը տանի Արծն ուրկէ 1047 Յունուար 6ին, Ծնընդեան օրը ձերբակալուելով կը տեղափոխուի Խալտոյառիճ (= հիմա Քալտառիչ, Կարնոյ դաշտին մէջ) կոչուած բերդը, Եփրատի վրայ, ժայռուտ կիրճի մը մէջ ամուր դղեակ մը (Ազգապատում, էջ 1232-34)։ Հոն քանի մը ամիս մնալէ յետոյ «հանեալ զնոսա անդի տարան ի Կոստանդնուպոլիս առաջի թագաւորին (Լաստ. 54) ուր թէև արտաքին մեծարանքներու առարկայ կ'ըլլար և արծաթով ու ոսկիով կը յղփացուէր, սակայն թոյլ չէր տրուեր դառնալ Հայաստան վասնզի կը կասկածէին որ «երթեալ ապստամբեցուցանէ զԱնի» (Լաստ. 72)։ Այս կասկածը մէկու մը նկատմամբ որ Անին երբեք անգամ Յոյներու ծախած և իր ձեռքով Անիի բանալիները Յոյներուն յանձնած էր, պարզապէս անհեթեթ էր, և ուրիշ նպատակ չունէր, եթէ ոչ Հայոց կաթողիկոսութեան վերջ տալ։ Սակայն երբ տեսան թէ իրենց ձեռնարկը Հայոց մէջ յուզում առաջ բերաւ, գէթ իրենց ազդեցութեան տակ և իրենց շրջանակին մէջ ունենալու համար Հայոց կաթողիկոսը, 1047էն 1051, չորս տարի Կ. Պոլիս վար դնելէ յետոյ, իբր թէ ընդունելով Ատոմ թագաւորին միջնորդութիւնը, արտօնեցին Սեբաստիա հաստատուիլ։ Պետրոս Գետադարձ հոն մեռաւ 1058ին։

Իրեն յաջորդեց Խաչիկ Անեցի (1058–1065) որ արդէն 1047ին ստացած էր նոյնիսկ Պետրոսի ձեռքով նախզգուշութեան համար, կաթողիկոսական օծումը, և կը մնար Անի։

Սակայն Պետրոսի մահուան մօտ յայտնած փափաքին վրայ ե-



կած էր Սեբաստիա և հոն կը գտնուէր։ Հետեւաբար առանց ընտրական ձեւակերպութեանց անիկա իր պաշտօնը շարունակեց։

Անկէ յոյները գոհ չմնացին, «վասնզի Հայոց քաղաքական իշխանութիւնը ջնջելէ յետոյ, եկեղեցական իշխանութիւնն ալ կ'ուզէին վերցնել, որպէսզի կարենան Հայ տարրը թէ՛ քաղաքականապէս եւ թէ՛ կրօնապէս իրենց մէջ ընկղմել, Հայ եկեղեցին խափանել եւ Հայ ազգութիւնը վերցնել» (Ազգ. 1256):

Հազիւ թէ կ'իմացուի որ Պետրոս վախճանած է և Խաչիկ անոր յաջորդ հռչակուած՝ Կոստանդին Դուկաս կայսրը կը մտածէ «խափանել զՀայրապետութիւնն ազգէն Հայոց» (Սմբատ, 75) ուստի Խաչիկը կը տանի Կ. Պոլիս (Լաստ. 89) ուր կ'ենթարկէ նեղութեանց նպատակ ունենալով «ընդ հարկիւ... արկանել» (Լաստ. 90) ինչ որ Կ. Պոլսոյ աթոռին հնազանդեցնել պէտք է հասկնալ — ինչպէս Օրմանեան կը բացատրէ (Ազգ. 1257)— Խաչիկ կը մերժէ յայտարարելով թէ «զոր մինչեւ յիմ ժամանակ չէ լեալ, եւ ոչ ես հաւանիմ» (Լաստ. 90)։

Իրեն կ'առաջարկուի նաև ընդունիլ Քաղքեդոնի դաւանութիւնը (Սմբատ, էջ 112) որ հաւասարապէս կը մերժէ Հայոց կաթողիկոսը որ 1059էն մինչև 1062 կը պահուի Կ. Պոլիս «յաճախ» (Սմբատ, էջ 75) կամ «արգելական» (Սամուէլ Անեցի, էջ 112), պէսպէս սպառնալիքներու ալ ենթարկուելով (Հմմտ. Լաստիվերտցի, էջ 89–90 և Ուռհ. էջ 152), որոնց ամէնուն ալ կը տոկայ Խաչիկ Անեցի, մինչև որ Գագիկ Աշոտեան Բագրատունի և Ատոմ ու Ապուսահլ Արծրունի թագաւորները «մեծաւ աշխատութեամբ ջան յանձինս կրեցին եւ հազիւ կարացին հանել» Խաչիկը, և արտօնութիւն ձեռք բերել որ Հայ երկիր դառնայ (1062)։

Սակայն նշանակելի է որ իրեն բնակավայր կը նշանակուի «ի սահմանս Երկրորդ Հայոց 'ի գաւառն որ կոչի Տարբնտայ կամ Տարանետիա (= հիմա Տարէնտէ) ուր Դուկաս կայսրը իրեն շնորհած «առանց հարկի, ... զրով եւ ոսկի մատանեաւ զոր 'ի Հայս իւրեանց տեղիք էին եւ երկու վանս 'ի Տարբնտայ» (Լաստ. 89–90), որոնցմէ մին հաւանօրէն կը կոչուէր Թաւբլուր(1) (Ուռ. 165) և ուր հաստատուած պէտք է ըլլայ Խաչիկ կաթողիկոս։ Տարանտիա, դիտելի է որ ո՛չ Հայաստանի մէջ էր և ո՛չ ալ Կապադովկեան Հայ թագաւորներու սահմանին մէջ, այլ անոնցմէ դուրս Յոյն կուսակալութեան մը մէջ «ի սահմանս Կոկիսոնի» (Սմբատ 75), ուր կը գտնուէր կաթողիկոսը թերեւս հսկողութեան տակ, արտաքին երեւոյթով գտնուելով իբր ճորտ իր սեփական հողերուն մէջ, ինչպէս կը հասկցուի Լաստիվերտցիի տողերէն

Այսպէս Խաչիկ մնաց Թաւբլուր մինչև իր մահը 1065։

Եւ որովհետև պատրաստ յաջորդ մը չկար, և Հայ իշխանութիւններու վերջինը՝ Կարսի թագաւորութիւնն ալ վերջացած և Գագիկ Աբասեան թագաւորը յուսահատ իր երկիրը պաշտպանելէ ան ալ նոյն տարին(2) եկած յունական երկիր ապաստանած և իրմէ Ծամնդաւը

---

(1) Թաւբլուր պէտք է ըլլայ Ղուրման Գալէն Ազիզիյէի և Ալպիստանի մօտ (ըստ Wilsonի «Handbook», էջ 272), Լաստիվերտցի (էջ 88) և Սմբատ (էջ 75) զայն դրած են Կոկիսոնի և Սամուէլ Անեցի (էջ 89) Տարանտէի մօտ (Laurent, Byz. et les Turcs, էջ 72)։

(2) Վարդան պատմիչ Գագիկ Աբասեանի տեղափոխութիւնը կը յետաձգէ մինչև 1072 թուական, Ռոմանոս Դիօժէնի գերութենէն յետոյ գրելով, «իսկ թագաւորն Կարուց Գագիկ որդի Աբասայ նեղեալ յերկիւղէ բուռ-

ստացած էր, Կոստանդին ԺԱ. Դուկաս, յարմար առիթը նկատեց իր
գաղափարը իրագործելու և արգելք եղաւ Խաչիկի յաջորդին ընտրու-
թեան (Ազգ. էջ 1267 և Գելցեր, էջ 285) և ուզեց Հայ իշխաններուն
վրայ ճնշում բանեցնել, որպէսզի անոնք համաձայնեցնէ իր ծրագի-
րին, ուստի Կ. Պոլիս հաւաքեց զանոնք։

Ատոմ և Աբուսահլ Արծրունիները, Գագիկ Աշոտեան Բագրատու-
նի և Գագիկ Աբասեան, և Շիրակունի Խաչատուր Անեցի(1) և այլ ա-
մէնքն ալ Կ. Պոլիս կոչուեցան (1065)։

Գագիկ Աշոտեան — որուն համար կը վկայուի (Հմմտ. Ուռհայեցի
էջ 193) և իր գրած դաւանաբանականէն (տես, նոյն, 195-214) ալ կը
հասկցուի թէ՝ կրօնական և դաւանաբանական խնդիրներու հմտութիւն
ունէր — սաստիկ կը ծառանայ և քաջաբար կը պաշտպանէ Հայ եկե-
ղեցւոյ դաւանանքը, և կը մերժէ ու կը ժխտէ Ատոմի և Աբուսահլի
հետ Կ. Պոլիս եկած և Դուկասէն շահուած Յակոբ Քարափնեցի կամ
Սանահնեցի վարդապետին յայտարարութիւնները որոնք կը միտէին
երկու Եկեղեցիներու մէջ դաւաբանական տարբերութեան մը գոյու-
թիւնը հերքել։

Յոյները տեսնելով որ Հայ իշխանները՝ աւելի կամ պակաս խի-
զախութեամբ բայց միշտ համերաշխ էին և մէկ ճակատ կը ներկայաց-
նէին իրենց դէմ, երբ կրօնական միութեան առաջարկ կ'ըլլար անոնց,
և թերեւս նոյնքան ազդուած արտաքին պատճառներէ, տեղի տուին
և ձգեցին որ Հայերը իրենց կաթողիկոսը ընտրեն։

Այս արտօնութեան ստացման մէջ դեր կատարած է կ'ըսուի Գա-
գիկ Աբասեանի կինը՝ Մարիամ որ սէրը և մտերմութիւնը գրաւած էր
Դուկաս կայսեր կնոջ Եւտոքսիայի (Դալլանոս, 225 և Ազգապատում, 1271)։

Այսպէս «որք մնացեալ էին ի քաղաքացն եւ յիշխանացն Հայոց յայնժամ

---

քացն՝ տալ զհայրենիս իւր ի յոյնս, եւ առնու զԾամնդաւ եւ զԼառիսա եւ զԱմա-
սիա եւ զԿոմանա եւ զՊռասդինս հարիւր, որ է գեօղեան» (102)։ Սակայն հա-
ւանական չէ։ Կիրակոս Գանձակեցի «Գագիկ թագաւոր Վանանդայ եւ Կա-
րուց, որ զնաց առ յոյնս» (52) ըսելով կը խօսի իր վրայ, կը պատմէ
թէ «Գագիկ թագաւորն Կարուց զնաց տեսանել զկայսրն յունաց, քանզի ընդ
իշխանութեամբ նորա էր, եւ ի դառնալն եկն ՚ի Կեսարիա, լուաւ նա՝ եթէ
Մարկոս ոմն մետրապոլիտ Կեսարու ունի շուն մի» (56) և կը նկարագրէ
այն անցքերը որոնք Գագիկ Անիի թագաւորին և յոյն մետրապոլի-
տին միջև պատահեցան։ Եւ քիչ յետոյ կ'աւելցնէ թէ «յառաջի ամի
սորա (Ռոմանոս Տիօժէնի որ 1067 Դեկտեմբերին գահակալած էր և հե-
տեւաբար իր առաջին տարին 1068 կրնար ըլլալ) «մեռաւ Գագիկ Շահնշահ
թագաւոր Վանանդայ»։ Այս պարագային աւելի առաջ պէտք է տեղա-
փոխուած ըլլայ և հաւանօրէն Անիի գրաւումէն անմիջապէս յետոյ։
Չամիչեան (Բ. էջ 984) կ'ըսէ թէ տեղափոխութիւնը կատարուած է
Անիի գրաւման տարին (1065) Նոյեմբեր ամսուան մէջ, մեղի անծանօթ
աղբիւրի մը վրայ հիմնուած։

(1) Այս իշխանը որ «Վեստ» այսինքն Աւագ իշխան կը կոչուէր,
հրապուրուելով Անտիոքի դքսութիւնը ստանալու փառքէն, կը հա-
մոզուի ընդունելու Քաղկեդոնական դաւանանքը և իր զօրքը առնե-
լով կ'երթայ Անտիոք (1068)։



խնդիր արարին զսանել զմի ոք արժանաւոր» (Ուռ. 185), Գագիկ Աբասեանի
մայրաքաղաքին՝ Ծամնդաւի մէջ, կաթողիկոսացուցին Գրիգոր Մա-
գիստրոսի որդին Վահրամը որ ստացաւ Գրիգոր անունը և «Վկայա-
սէր» կոչումը (1066)։

Այսպէս փրկուեցաւ Հայոց կաթողիկոսութիւնը, սակայն Բիւ-
զանդիոնի կրօնական աններող քաղաքականութիւնը ունեցաւ իր
ձախող անդրադարձութիւնը Հայ մտայնութեան վրայ։

Գելցեր (285) իրաւամբ կ'ըսէ թէ «եթէ Հայաստանի մէջ կային մար-
դիկ որոնք կը կարծէին թէ յունական կառավարութիւնը զօրեղ պաշտպանու-
թիւն ցոյց կու տայ Հայոց քրիստոնէական կրօնքին, հիմնովին զգացին իրենց
սխալը։ Խումբ մը սովալլուկ հոգեւորականներ Հայոց հարուստ վիճակներու եւ
վանահայրութիւններու գլուխ անցան։ Ուղղահաւատ միաբանակներու կրօնական
հալածանքներուն վերջը չէր գար», և կը շեշտէր երկու ժողովուրդներուն
կրօնական ատելութիւնը որ ատելութիւններուն յոռեգոյնն էր, ժա-
մանակին ըմբռնումները նկատի առնելով։

Սակայն կրօնական մարզէն դուրս Հայերը — ինչպէս նաև Փոքր
Ասիոյ միւս բնակիչները — ունէին ուրիշ պատճառներ ատելու Բիւ-
զանդական պետութեան վարիչները։ Ասոնց մէջ մասնաւորապէս կա-
րեւոր տեղ ունէին այն տուրքերը և զրկանքները զորս կրելու
դատապարտուած էին երկրագործները, մշակները և արհեստաւորնե-
րը, որոնք ծանր տուրքերու տակ կը հեծէին, և իրենց աշխատու-
թեան արդիւնքէն կը զրկուէին, որպէսզի դրամ հայթայթեն արքու-
նական ճոխութեանց, ազնուականներու պերճանքին և շուայտու-
թեանց համար, որոնց կայանն էր այդ օրերու Բիւզանդիոն։ Ասոնք
անտարակոյս կը կազմէին տնտեսական պատճառը այն յարումին որ
դէպի Թուրքերը ցոյց տուին Փոքր Ասիոյ բնակիչները և անոնց մէջ
գլխաւորաբար Հայերը, որոնց դէմ սրուած ատելութիւն մը ցոյց կու
տային Բիւզանդացիք։

Հայերը՝ չարաչար յուսախաբ եղած են նաև իրենց ակնկալած
զօրաւոր պաշտպանութիւնը չգտնելով, վասնզի բարբարոսները ի-
րենց ետեւէն հասան Եփրատէն արեւմուտք և Բիւզանդիոն անկարող
հանդիսացաւ պաշտպանելու իր սահմանագլուխները, ինչպէս նաև իր
ճորտ իշխանութիւնները, վասնզի իր վարչութիւնը ապականած էր
և կայսրութիւնը՝ այս տագնապի օրերուն ձգուած էր առհասարակ
ոչ-զինուորական և անհեռատես վարիչներու, որոնցմէ մէկն էր Վասիլ
Բ.ի (976–1025) և Կոստանդին Ը.ի (976–1028) երկու կայսերակից եղ-
բայրներուն իշխանութեան վախճանին գահակալող Ռոմանոս Գ.ը
(1029–1034), Կապադովկեան Հայ ծագմամբ, Արկիրոս կամ Արկիւ-
րոպուլոս մեծ կալուածատէր ընտանիքէն ծերակուտականը, որ ոչինչ
կրցաւ ընել կայսրութեան փրկութեան համար, ինչպէս նաև իր յա-
ջորդները, որոնք իրենց անխորհուրդ և յաճախ մոլեռանդութենէ
մղուած ձեռնարկներով աւելի ծանրացուցին տագնապը։

Վարչութեան կամ դրութեան մէջ փոփոխութեան մը պէտքը ա-
մէն ոք զգալ սկսաւ։ Ուստի երբ Կոստանդին Թ. Մոնոմախոսի (1042–
1054) յաջորդը Թէոդորա կայսրուհին մեռաւ (30 Օգոստ. 1056) և Մի-
քայէլ Զ. Ստրատոնիկ (30 Օգոստ. 1056–1057 Օգոստ. 31) գահ բարձ-
րացաւ, զօրաւոր զինուորական յեղափոխութիւն մը ծագեցաւ։ Զօ-
րականները, մեծ մասամբ Փոքր Ասիացի կալուածատէրներ, միացան

և 1057 Յունիս 8ին կայսր հռչակեցին Պափլագոնիոյ մէջ Իսահակ Կոմնենոսը, որուն միացան Հայ պզտիկ իշխանութիւնները (Schlumberger, Epop. Byz. Գ. 788) թերեւս այն միամիտ հաւատքով որ կորովի զինուորական մը պետութիւնը և զիրենք պիտի փրկէր բարբարոսներու սպառնացող վտանգէն, ուստի ամէն նպաստ ընծայեցին անոր, որուն Սեբաստիայէն, Մելետինէէն և Տիվրիկէն բերած զօրքերը ընդդէմ Միքայէլ Զ. Ստրատոնիկի, Հայեր էին (Կենտրենոս Բ. 628)։

Իսահակ շնորհիւ իրեն ընծայուած այս աջակցութեան առաջացաւ մինչև Նիկիա և յաղթեց կայսերական գունդերուն։

Միքայէլ հրաժարեցաւ և 1057 Սեպտ. 2ին Ս. Սոփիայի մէջ Իսահակ կայսր օծուեցաւ։

Ասիկա վերադարձ մըն էր դէպի այն օրերը ուր զինուորներ կը վճռէին կայսրութեան բախտը և բանակներ՝ կը կատարէին ընտրութիւնը։ Միեւնոյն ատեն այս յեղափոխութիւնը փորձ մըն էր զինուորական ուժեղ վարչութեամբ մը պետութիւնը փրկելու վաղահաս կործանումէ մը, որուն հեռապատկերը կը տեսնէին։ Սակայն յուսախաբութիւնը մեծ եղաւ երբ Իսահակ Կոմնենոս հրաժարեցաւ (1059) և վանք քաշուեցաւ իշխանութիւնը յանձնելով իրեն ընկեր և նախարար Կոստանդին Ժ. Դուկասին (1059-1067) (Տուկիծ կոչուած մեր պատմագիրներէն) որ տնտեսական գործերու մէջ հանճար մըն էր (Գելցեր, 291) և երկրորդական պաշտօններու մէջ փայլուն յաջողութիւններ ունեցած էր։

Այս ընտրութիւնը որ սխալ մըն էր, վերադարձ մըն էր դէպի Ծերակուտական ազնուապետութիւնը և քաղաքային պաշտօնատարութիւնը, մինչ պետութիւնը ճգնաժամի մը մէջ էր և զինուորական տաղանդն էր որ զայն կրնար փրկել վերահաս կործանումէ մը։

Եւ արդիւնքը անմիջապէս տեսնուեցաւ։

Սելջուկեանք որոնք 1058ին առաջին անգամ առաջացած էին մինչև Եփրատ, և Մելետինէն աւարի տալէ յետոյ անցեր էին Եփրատը և Հանձիթի մէջ ձմեռեր (տես Ուռ. 155 և Սմբատ 72), նոյնիսկ Կոստանդին Ժ. Դուկասի (1059-1067) գահակալութեան տարին, այսինքն այն տարին ուր Բիւզանդիոն կ'որոշէր կրկին թուլամորթ պաշտօնատարներով և գեղեցկախօս հռետորներով կառավարուիլ, առաջացան մինչև Ալիս գետ, այսինքն մինչև Սեբաստիա և զայն պաշարեցին (1059 Յուլիս 4), մինչ Կոստանդին Ժ. Դուկասի և զինքը շրջապատողներուն ժամանակազանց իշխանութիւնը անզօր, կը մնար դիտողի դիրքին մէջ։ Թուրքերը ութ օր ամէն խժդժութիւն գործելէ յետոյ Սեբաստիոյ մէջ, մեկնեցան «անթիւ եւ անհամար գերութեամբ» (Ուռ. 161)։ Ատոմ և Աբուսահլ թագաւորները, որոնք պարտաւորուած էին Խաւարտանէք բերդը ապաւինիլ, մինչև որ հրոսակը հեռանար, — զի «անպարիսպ էր քաղաքն Սեբաստիա» (Ուռ. 160) — վտանգը անցնելէն և բարբարոսները ետ քաշուելէն յետոյ դարձեալ իրենց հողերուն տէր դարձան, սակայն անշուշտ առանց Եփրատի արեւելքը գտնուածները ստանալու։ Այս առաջին փորձը քաջալերական էր բարբարոսներուն համար որոնք Ալփասլանի հրամատարութեամբ Հայաստանը ոտնակոխ ընելէ և Անի քաղաքը գրաւելէ յետոյ (1065 Օգոստ. 15), և Մելետինէի շուրջը Բիւզանդական բանակը ջարդելէ յետոյ աւերելով, այրելով և յափշտակելով, իրենց ճամբուն վրայ գտնուած վայրերը, մտան



Կապադովկիա «բազում զաւառաց տիրեալ» ինչպէս կ'ըսէ լակոնիկ կերպով Լաստիվերտցի (էջ 167)։

Գագիկ Բագրատունիի կալուածին մէջ կամ մօտը գտնուած Կեսարիան եւս կ'իյնայ թուրքերու ձեռքը։ Ալփասլան զայն կը գրաւէ 1067ին(1) և կ'աւերէ (Ատտալիատէս, 94 և Սկիլիցէս, 661. Lebeau. հտ. ԺԴ. 460. Gibbon, գլ. ԾԷ.)։ Բիւզանդական բանակները հաւանօրէն ոչ մէկ օգնութիւն կ'ընծայեն Հայ թագաւորին պաշտպանելու համար պատմական այս մեծ քաղաքը, որուն համար ըսուած է թէ առանց դիմադրութեան յանձնուած է Ալփասլանի։

1069էն սկսեալ Թրքական պզտիկ հրոսախումբեր կը թափանցէին մինչև Կիլիկիա և Տաւրոս, և աւերումի կը մատնէին այս շրջանակները, ինչպէս նաև Կապադովկիան (Ատտալիատէս, էջ 135) որ անպաշտպան ձգուած էր բարբարոսներու գրոհին առջև։ Ալփասլանի ահաբեկող յառաջխաղացութիւնը՝ ստիպեց Բիւզանդիոնի Եւդոկիա կայսրուհին որ ամուսնանայ զինուորականի մը՝ Ռոմանոս Դիոգինէսի կամ Տիօժէնի հետ և պետութեան ղեկը անոր յանձնէ (1067 Դեկտ.)։ Ռոմանոսի քաջութիւնը և զինուորական հմտութիւնը յոյս կու տար թէ տէրութիւնը նոր Լեւոն Իսաւրացի կամ Կոստանդին մը պիտի ունենար։

Ռոմանոս Տիօժէն կայսրը գահ բարձրանալու պէս բանակը վերակազմեց, զօրահաւաք ըրաւ Կապադովկիոյ և Եւրոպական նահանգներու մէջ և զինեց բոլոր Փռիւգիան։ Գրեթէ տարի մը զբաղեցաւ կազմակերպելու և կարգաւորելու իր գունդերը։

Պաշտօնատարներու երկարատև յոռի վարչութիւնը խանգարած էր զինուորական կարգապահութիւնը և դատարկացուցած՝ տէրութեան գանձարանը։ Այլատարազութիւնը վարձկան զինուորներուն որոնց հրամանատարները մեծ մասամբ իրենց ցեղէն սպաներ էին, դժուար և անապահով կը դարձնէր ընդհանուր հրամանատարութիւնը և գործողութեան միօրինականութիւնը։ Հակառակ ասոր Ռոմանոս 1068ին ձեռք բերաւ բաւական նշանակելի յաջողութիւններ։ Ալփասլան որ մինչև Փռիւգիա առաջացած էր, պատերազմին շարունակութիւնը յանձնած էր ամիրաներու, որոնց գունդերը՝ տարածուած էին Փոքր Ասիոյ ամէն կողմերը։ Անոնք կողոպուտով յղփացած և անկարգապահութեամբ քայքայուած, տկարացան Ռոմանոսի բանակին առջև և Եփրատէն անդին վանուեցան (Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, էջ 6 և Հմմտ. Gibbon. VI. 247)։ Ռոմանոս Կապադովկիան բարբարոսներէն մաքրելէ յետոյ քալեց դէպի Լիկանտոն, միւս կողմէն ուժգին հարուածով մը ետ մղելով Սելջուկեան այն աւազակային գունդերը՝ որոնք կը կողոպտէին Պոնտոսի շրջանները։ Ան խստութեամբ պատժեց նաև Հալէպի իսլամները, և յետոյ մտաւ Ասորիք և առաջացաւ դէպի Անտիոք (Asie Mineure, 512)։ Թերեւս աւելի հարաւ յառաջանար, սակայն ճամբան երբ լսեց որ Սելջուկները գրաւած են Նէոկեսարիան (=Նիկսար) (1068) և յօշոտելէ և կործանելէ յետոյ, բնակիչները գերի տարած (Asie Mineure, 512), ստիպուեցաւ ետ դառնալ։

1069ին այդ վայրենի աւազակները յանկարծ նորէն մտան Կապադովկիա, ամէն տեղ բարբարոսական աւերում և քանդում պատճա-

(1) Դուրեան (Ազգ. Պատմ. էջ 405) 1064ին կը դնէ այս դէպքը։

ռելով (Դելցեր, 301 և Ուռհայեցի 232), վասնզի Բիւզանդական ծանր սպառազինութեամբ բանակներուն դէմ այդ յելուզակներուն թեթև հեծելազօրքը՝ դիւրաշարժ և արագ գործողութիւններով անակնկալներ կը պատճառէր։

Կեսարիա, Կապադովկիոյ մայրաքաղաքը, Ալփասլանի այս արշաւանքին սաստկութիւնը կրեց վասնզի բռնաւորը անոր «Ս. Բարսեղի տաճարին հռչակէն եւ հարստութենէն հրապուրուած էր։ Եկեղեցւոյն հաստատուն շինուածքը դիմադրեց քանդիչին, բայց աւար տարաւ սրբարանին դուռները, ոսկիով եւ մարգարիտներով բանուած եւ պղծեց պաշտպան սուրբին նշխարները, որուն մահկանացու տկարութիւնները դարերու պատկառելի ժանգով ծածկուած էին» (Gibbon, VI, 245)

Ռոմանոս կայսրը դարձեալ անձամբ անոնց դէմ ելաւ և յաջողեցաւ այս հրոսակները կրկին Եփրատէն անդին քշել։

Սակայն երբ ան յանդուգն արշաւանքով մը Լիկանտոնի ճամբով անակնկալ կերպով Խլաթը, Վանայ լիճին ամրոցը գրաւելու մտադրութեամբ կ'առաջանար, հազիւ Տաւրոսը անցած, իմացաւ թէ թուրքերը իր կռնակէն անցնելով մտած են Կապադովկիա և աւարի տուած Փռիւգիոյ մէջ Ամորիոնը (=Հաճի Համզա) (1068) և իր զօրապետը՝ Փիլարտոս Կապադովկիոյ մէջ ջարդ մը կրած է (Դելցեր, 301)։

Ռոմանոս Տիօժէն, 1069ի գարնան Կեսարիոյ մօտ զարկաւ թուրքերը, որոնք Մելետինէի մօտ Եփրատը անցած էին, սակայն չկրցաւ արգիլել որ անոնք Կապադովկիոյ մէջ յառաջանալով մինչև Իկոնիոն (=Գոնիա) չկողոպտեն և չթալեն այդ երկիրները։

Կայսրը կրկին յաջողեցաւ զանոնք փախցնել, և ստիպել որ լքեն իրենց աւարին մէկ մասը, վասնզի անոնց դարձի ճամբան կտրեց։ Թուրքերը Կալիկատնոսի ձորէն անցան Տաւրոսը, Սելեւկիոյ շրջանակը հաստատուած Հայերու յարձակման ենթարկուելով (Օրմանեան, Ազգապատում, 1138 և Հմմտ. Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, 5) և մտնել Կիլիկիա, ուր հասնելով լսեցին որ յունական բանակը կ'սպասէր իրենց Մամեստրայի մէջ։ Ուստի Բալտոլիբաս աղբիւրին քով կարճ հանգիստ մը ընելէն ետքը՝ Սարուանդիքարի Թօ Սարպասիքոն օրօս (այժմ Գազան Ալի) կիրճէն անցան Ամանոսը և Հալէպ ապաստանեցան (W. Ramsay, Historical Geography of Asia Minor, 384–5, հիմնուած Սկեղիցէսի Ep. Attalի և Zonarի վրայ, Կոմմագենացի, Նոյն, 5)։

1070ին, թուրքերը դարձեալ նոր արշաւանքի մը ձեռնարկեցին։ Ռոմանոս այս երրորդ յարձակման դիմադրելու գործը թողուց Մանուէլ Կոմնենոս Կիւրոպաղատին, որ Կապադովկիոյ մէջ դիրք բռնած էր։

Թուրքերը այս անգամ մեծ յաղթութիւն մը տարին։ Մանուէլ Կոմնենոս չարաչար պարտուեցաւ և գերի ինկաւ (Դելցեր, 302. Asie Mineure, 512)։ Թուրքերը մինչև Փոքր Ասիոյ գրեթէ արեւմտեան ծովեզերքը թափանցեցին և կործանեցին ի մէջ այլոց, Եփեսոսի մօտ Խոնայի աւանը (Murray's Handbook of Asia Minor, 47. Կոմմագենացի, Նոյն 5-6) որուն Ս. Միքայէլ Հրեշտակապետին նուիրուած հռչակաւոր տաճարը, որ այնքան անգամ շնորհեր էր իր հրաշագործ օգնութիւնը Բիւզանդական կայսրերուն, պղծուեցաւ և կողոպտուեցաւ (Դելցեր, 302)։

Այս նշանաւոր աղէտը հարկադրեց Ռոմանոս Դ.ը որ 1071ին ձեռ-



նարկէ չորրորդ արշաւանքի մը, որուն հրամանատարութիւնը ինքն ստանձնեց։

Ալփասլան գրաւած և ամրացած ըլլալով Հայաստանի նշանաւոր Մանազկերտ քաղաքին մէջ (Դելցեր, 302. Ուռհայեցի, 232)։ Ռոմանոս Դ. Փոքր Ասիան թրքական այս արշաւանքներու սարսափէն մի անգամ ընդ միշտ փրկելու համար յայտարարեց որ Հայաստանն ալ Սելջուկներու ձեռքէն պիտի ազատէր։ Ուստի 100.000 զինուորներէ բաղկացած բանակի մը գլուխն անցած, անձամբ գնաց կռուիլ Քրիստոսի այս թշնամիին դէմ։ Ռոմանոս արդարև կրցաւ առաջանալ մինչև Հայաստան և գրաւել Խլաթը և ետ առնել Մանազկերտը։

Ալփասլան ընդունելով թէ արժանաւոր մրցակիցի մը հետ գործ ունի, հաշտութեան առաջարկ ներկայացուց, սակայն Ռոմանոս յիմար ամբարտաւանութեամբ մերժեց (Դելցեր, 301–3. Ուռ. 237–239. Լաստ. 169), և ճակատեցաւ թուրք աշխարհակալին հետ Մանազկերտի դաշտին մէջ, ուր չարաչար պարտուեցաւ և գերի ինկաւ (Հմմտ. Դելցեր, 303–304. Ուռ. 240–242. Լաստ. 170-171)։ Կայսեր զօրքը անճապարանքով հաւաքուած տակաւին կարգապահութեան չէր վարժուած։ Հակառակ ասոր առաջին օրը հերոսաբար կռուեցաւ, սակայն դաւադրութիւնը և մատնութիւնը թուլցուցին ամէնուն եռանդը։ Երկրորդ օրն իսկ Անդրանիկոս Դուկաս իշխանը դաւաճանութեամբ իր գունդով ետ քաշուեցաւ։ Ուրիշ զօրապետներ հետևեցան իրեն՝ իրենց զօրագունդերով։ Թաթար հեծելազօրքը այն ատեն կատաղի սաստկութեամբ կռուելով անարգել առաջացաւ։ Կայսեր ձիուն վիրաւորուիլը՝ պատճառ եղաւ որ ինքն ալ գերի իյնայ (Նոյն)։

Մանազկերտի սոսկալի պարտութեան օրը Բիւզանդական փառայեղ պետութեան մահուան ժամը եղաւ։ Թէև անոր հետեւանքները իրենց բոլոր արհաւիրքներով անմիջապէս զգալի չեղան, բայց Փոքր Ասիոյ արեւելեան մասը՝ Հայաստան և Կապադովկիա, այն երկիրները որոնք այնքան կայսրերու և զօրապետներու ծնունդ տուած էին և որոնք կը ներկայացնէին տէրութեան ոյժը, մի անգամ ընդ միշտ պիտի կորսուէին։

Կապադովկիան՝ Մանազկերտի պարտութեան վաղորդայնին, բաց կը մնար Սելջուկեանց առջև, ինչպէս նաև ճամբան Կեսարիայէն մինչև Իկոնիոն (Zimm. ՀԱ. 1900, 212)։

Ալփասլան՝ Մանազկերտի ճակատամարտէն անմիջապէս յետոյ, Հայաստանի փոխարքայ կարգեց իր Սիւլէյման Իբն Գութուլմիշ քեռորդին, Երզրումը՝ տուաւ Սալդուկ անունով թուրքման ամիրայի մը, և Երզնկան՝ Մանկուճակի։ Իսկ Երզնկայէն մինչև Ալիսի բերանն ալ՝ Դանիշմանդ անուն մէկու մը, արտօնելով զանոնք որ իրենց նուաճած երկիրներուն վրայ ապահարկ իշխեն և յանձնարարելով միայն որ միաբանութեամբ գործեն և ջանան հետզհետէ տկարացնել քրիստոնեայ իշխանութիւնները և ժողովուրդը ընտելացնել իսլամի տիրապետութեան (Փիլարտոս Հայր, 20–21)։

Սալդուկի և Մանկուճակի տրուած նահանգները արդէն նուաճուած էին, բայց Դանիշմանդ 'ի նորոյ պիտի նուաճէր իրեն իշխանութեան սահմանուած երկիրը (Նոյն, 21), ինչ որ ան կրցաւ փութով կատարել։

Առաջին գրաւած վայրը եղաւ Նիկսար քաղաքը (1071), յետոյ հե-

տըզհետէ իր նուաճման սահմանները ընդարձակեց, պարբերական յարձակումներով և աւերածումներով։

Այս յարձակումներու ընթացքին է որ Կեսարիան աւերակի վերածուեցաւ 1073–1074ին (Բրուիննիոս Բ. գլ. 3) այնպէս որ ոչ հեռու այս երբեմնի բազմամարդ և բարգաւաճ քաղաքէն, տարի մը յետոյ գտնուեցան ճակատամարտի մը մէջ իյնողներուն դիակները որոնք տակաւին հողին վրայ կը մնային (Ատտալիատէս, 147) վասնզի անոնք իրենց գարշահոտութեամբ ոչ ոք անհանգիստ ըրած էին այս անապատի վերածուած երկրին մէջ։

Ինչպէս բոլոր ձախողուածներու ատեն կը պատահի, այս սոսկալի տագնապին ատեն ալ պատասխանատուներ փնտռել սկսան, բոլոր անոնք որ Սելջուկ բարբարոսներու տիրապետութեան աղէտալի հետեւանքներուն կ'ենթարկուէին կամ անոր սպառնալիքը օրէ օր աւելի մօտ կ'զգային։

Ուստի Յոյնը սկսաւ Հայը ամբաստանել և Հայը՝ Յոյնը, իբր պատճառ հասնող դժբախտութիւններուն։ Այս հոգեբանութեան արտայայտութիւնն էր անշուշտ երբ Կեդրենոս (Բ. 571) և Զոնարաս ժէ. 637) համերաշխաբար կը հաստատեն թէ Իբերիոյ և Միջագետքի Հայերը նախամեծար սեպած են թուրքերը, որոնց դէմ չեն ուզած կռուիլ Բիւզանդիոնի համար։ Յոյն ուրիշ պատմագիր մը՝ Քէքամենոս (գլ. 50) միեւնոյն հոգեբանութեամբ կը հաւաստէ թէ Հայերը համատարած անապատի մը վերածած են երկիրը և թուրքերը առաջնորդած են կայսրութեան հողերը։

Անոնք հաւատացած էին թէ 1065ին թուրքերը Անին գրաւած էին կամակցութեամբ Բագարատ Հայուն՝ որ առանց պարէնի և զօրքի ձգած էր այդ վայրը (Ատտալիատէս, 80) և բնակիչներուն՝ որոնք փորձած էին չահիլ թշնամիի գթութիւնը (Նոյն, 81)։ Նոյնպէս անոնք այնպէս ցոյց տալ կ'ուզէին թէ Հայերը 1065ին օգտուած էին թրքական արշաւէն, ապստամբելու համար կայսեր դէմ և աւազակութիւն ընելու՝ Claudiaի և Goubbosի երկիրներուն մէջ(1) (Michel le Syrien, Գ. հտ. 162, N. Yorga, Geschichete des Osmanischen Reiches. Ա. 47)։

Յոյները կ'ամբաստանէին բանակին մէջ ծառայող Հայերը թէ դաւած են ի Հիերապոլիս 1068ին (Սկիլիցէս Բ. 674) և գրաւած՝ այս քաղաքը կայսրէն թշնամիին հաշուոյն (Ատտալիատէս 116)։ Անոնք կը մեղադրէին Ծամնդաւի Հայերը որ չեն օգնած Ամորիոնին որուն վրայ յարձակած և կողոպտած էին թուրքերը երբ կայսրը Սուրիա էր 1068–1069ին. (տես Gfrörer, «Byzantinische Geschichten.» 1872, Գ. 714)։ Կը դատապարտէին նաեւ Արեւմտեան Միջագետքի — որ կը գտնուէր ընդմէջ Մելետինէի և Եկեղեաց — Հայերը, թէ ջարդած են Մելետինէէն ոչ հեռու թուրքերէն խուճապի մատնուած՝ Փիլարտոսի բանակին Յոյները (Ատտալիատէս, 135)։ Նոյնպէս Հայոց հակայոյն տրամադրութեան արդիւնքը կը համարէին Մելետինէի գունդերուն մերժումը (1067) Միջագետքի բանակին միանալու (Ատտալիատէս, 93) և Կեսարիոյ առանց դիմադրութեան անձնատուութիւնը (1067) Ալփասլանին։

(1) Claudia և Goubbos կը գտնուէին ըստ Լոռանի (Byz. et les Turcs, 70) Մալաթիոյ հարաւ-արեւմուտքը, Եփրատի եզերքը։



Անկարելի չէ ըստ Laurentի (Byz. et les Turcs, 75) որ Հայերը կամովին ձգած ըլլան 1069ին Իկոնիոյ աւարէն դարձող թուրքերը Կիլիկիա անցնելու (Gfrörer, Նոյն, Գ. 736) և նոյնիսկ անոնք նպաստած ըլլան մատնութեամբ պատերազմի դաշտին վրայ Ռոմանոս Տիօժէնի Մանազկերտի ձախողուածին։

Սակայն եթէ ասոնք ճիշդ են — և շատ զօրաւոր փաստեր չկան, հերքելու համար գոնէ խուլ հակառակութեան մը և չկամութեան մը գոյութիւնը հանդէպ Յունաց — պէտք է ըսել թէ անիկա մէկ արգասիքն էր այն ատելութեան որ Հայերուն նկատմամբ ցոյց կու տային Յոյները կրօնական պատճառներով, նոյնիսկ զանոնք համարելով իբր աստուածային զայրոյթին պատճառ։ Երեւակայեցէք թէ մատենագիր մը, ժամանակակից պատմագիր Ատտալիատէս (97) որ նախապաշարեալ ռամիկ մը չէր կրնար ըլլար, չի վարանիր, այն դժբախտութեան առթիւ որ 1067ին թուրքերը պատճառեցին կայսրութեան, անոր սահմաններէն ներս խուժելով և անօրինակ կոտորածներ տալով, գրելու թէ «Բացայայտ է որ այսպիսի տակնուվրայութիւն մը ժողովուրդներու, այսպիսի կորուստ մը կայսրութեան հպատակներուն, աստուածային բարկութեան մէկ արդիւնքն է ընդդէմ Իբերիոյ, Միջագետքի հերետիկոսներուն, մինչեւ Լիկանտոն, 'ի Մելիտինէ եւ դրացի ուրիշ երկիրներ, ընդդէմ Նեստորեան հերձուածողներու եւ անգլուխներու (acéphales) կուսակից Հայերու։ Երբ վտանգը հարուածեց Օրթոտոքսները, նմանիս հաւատացեալները կազմալուծուած էին»։ (Նման գաղափարներ կը յայտնէ նաեւ Սկիլիցէս, 687)։

Մտածելու այս կերպը անշուշտ չէր կրնար անդրադարձութիւն մը չունենալ երկու ժողովուրդներու ընթացքին վրայ։ Այս տխմար մըտայնութիւնը որ յոյն ժամանակակից պատմագիրները կ'արտայայտեն տիրող մթնոլորտը ցոյց կու տայ։ Եւ երբ ամէն մարդ համոզուած է թէ Հայոց կրօնքն է պատճառ դժբախտութիւններու, ի՞նչ կրնար ըլլալ վիճակը Հայոց։

Իսկ երբ Հայը մէկ ճակատ՝ բուռն ընդդիմութիւն ցոյց կու տայ օրթոտոքսութեան չյարելու համար, կարելի է երեւակայել թէ որքան կը բորբոքի ատելութիւնը Յունաց։ Այդ ատելութիւնը փոխադարձաբար իր կարգին Հայոց մէջ առաջ բերաւ նոյն զգացումը, որ երբեմն այնպիսի բուռն թափ մը առաւ որ թերեւս նոյնիսկ մղեց Հայերը նպաստելու թուրքերու յաջողութեան, կամ պատեհութիւն գտած ատենին չարիք հասցնելու Յունաց, անկախութեան ձգտելով, ըմբոստութիւններ յարուցանելով, կողոպուտներ կատարելով կամ դաւաճանութեան դիմելով (Laurent, Byz. et les Turcs, 73)։

Միայն ասով կրնայ մեկնուիլ թրքական արշաւներու միջոցին տիրող խառնակութիւններէն բախտախնդիր կամ վրիժառու Հայերէ ոմանց յարձակումները ճամբորդներու, աւաններու և վանքերու վրայ և մինչև իսկ Մելետինէ մտնելը կողոպտելու համար կուսակալին պալատը (Michel le Syrien Գ. 164)։ Նոյնպէս միայն այս ձեւով կրնայ մեկնուիլ նոյն ատենները, ոչ հեռու Էրզրումէն, Իվանէի, — որդին այն «Լիպարիտին որ իզուր կռուած էր Յունաց համար 1046ին» — դժգոհ Բիւզանդացիներէն, հրաւիրելը թուրքերը և ա-

*առաջնորդելը անոնց արշաւանքը դէպի հողքիս*(1) (*Լաստ*. 123-4)։

*Այս արարքները — անզուսպ ատելութեան մը նշանները — Բիւզանդական կայսրութեան վարիչներուն և անոնց մոլեռանդ խորհրդատուներուն ընթացքին ուղղակի հետեւանքն էին, որոնք իրենց կարգին կասկածելի կը դարձնէին բոլոր Հայերը։ Անոնք այնքան ստուար թուով մը հաւաքուած էին պաշտպանութեան համար այնքան դիւրութիններ ներկայացնող ընդարձակ երկրի մը մէջ, ուր կըրնային շատ կարեւոր օժանդակութիւն մը բերել կայսրութեան գոյութեան համար եթէ անխորհուրդ հալածանքը որ յոյները կը գործադրէին յարափոփոխ մտայնութեան մը ենթարկած չըլլար զանոնք։*

*Ինչպէ՞ս կարելի է մեղադրել Հայերը եթէ անոնք ներքուստ փափաքէին Ռոմանոսի պարտութեան, երբ պետութեան ճգնաժամին կայսրութիւնը փրկելու համար 1067ին գահ բարձրացուած այս զինուորականը, 1068էն 1071 կրկնուող արշաւանքներուն փոփոխակի յաջողութիւններով դիմագրաւելէ յետոյ, վճռական պայքարի մը մտնելու համար դացած ատեն 1071ին, տկարամտութիւնը կ'ունենայ ականջ կախելու յոյն մոլեռանդներու խօսքին որոնք կը չարախօսեն* «զբնակչացն Սեբաստիոյ եւ զամենայն ազգն Հայոց. եւ ասեն՝ «Եթէ յորժամ եհար զմեզ Նսրին ամիրայն, ազգն Հայոց առաւել կոտորեցին զմեզ քան զթուրքն», *այսինքն անոնք օգնած էին Թուրքերուն և զիրենք կոտորած* (*Ուռհայեցի*, 238)։

«Եւ հաւատաց թագաւորն Դիոժէնն սուտ խօսիցն Հոռոմոց եւ սպառնացեալ սաստիկ երդմամբ եթէ ի դառնալ 'ի պատերազմէն պարսից՝ ԲԱՌՆԱՄ ԶՀԱՒԱՏՆ ՀԱՅՈՑ: Եւ նոյն ժամայն հրամայեաց ալափ տալ զՍեբաստիա քաղաքն ամենայն զօրացն Հոռոմոց եւ յալափելն արարին սպանումն բազմաց վասն անիրաւ եւ սուտ դատաստանացն զոր արար անօրէնն թագաւորն Դիոժէն, եւ ընկէց յերեսաց զարդիս թագաւորացն Հայոց զԱտոմ եւ զԱպուսահլ, եւ արկ սուգ մեծ ի վերայ Սեբաստիոյ քաղաքին» (*Ուռհայեցի*, 238)։

*Սակայն չկրցաւ իր սպառնալիքը գործադրել վասնզի Մանազկերտի ճակատամարտին մէջ գերի ինկաւ Ալփասլանի ձեռքը, չարաչար պարտութենէ մը յետոյ, ուր դաւաճանութիւնը անվրէպ դեր կատարած է, միայն թէ որոշ չէ թէ որոնց կողմէ։*

*Արիստակէս Լաստիվերտցի ժամանակակից Հայ պատմագիրը կը հաւաստէ թէ հակառակ անոր որ* «թագաւորն Յունաց... լի ցասմամբ կայր ընդ զօրս Հայոց եւ ընդ ազգն, եւ ընդ ակամբ հայէր ի նոսա» (171) *քաջաբար կը կռուին*, «արութեամբ ընդդէմ կային հանդիսին, եւ ոչ զթիկունս դարձուցանէին» (*Նոյն*) *մինչ յոյն* «մեծ գունդ մի՝ ... ապստամբեալ 'ի թագաւորէն Յունաց՝ ի կողմն թշնամեացն յաւելուին» *և այս պատճառաւ կը կարծէր թէ* «բազում բեկումն զօրացն եղեւ» (*Նոյն*), *մինչ ընդհակառակը ժա-*

(1) *Ինչպէս կը տեսնուի Յոյներու դէմ ձգտումը, Հայերուն յատուկ չէր։ Բիւզանդիոնի բոլոր հպատակները ատելութեամբ լեցուած էին անոր դէմ, իր պաշտօնատարներու վարմունքին և տուրքերուն ծանրութեան և մանաւանդ կրօնական հալածանքին պատճառով և երբ ազատարար ընդունած են Թուրքերը։ Այսպէս 1065ին Արաբներ և Սուրիացիներ, երբ Թուրքերը Հալէպի շուրջը կը գտնուէին, ոտք ելան ընդդէմ իրենց բնական դաշնակից Բիւզանդիոնի և նպաստեցին Թուրքերու յաջողութեան։*



*մանակակից օտար պատմիչներէ մեզի հասած տեղեկութիւններ համաձայն կ'ըսեն Հայերու կառակը հաստատել կը միտին և կարծես մատնանիշ կ'ընեն Հայերու և Թուրքերու միջև գործակցութիւն մը և դաւ մը Ռոմանոսի դէմ, որ սպառնացած էր իր յաղթական դարձին բնաջնջել Հայ կրօնքը։*

*Անոնք կը պատմեն թէ Ռոմանոս, անցած էր* Saugar*ը, երբ ետ դարձուց շատ մը տեղացի գունդեր, վասնզի* «ան կը վախնար տեսնելով իրենց պետերը թշնամիին յաղթութեան փափաքող» (*Սկիլիցէս*, 690. Gfrörer, *Նոյն*, Գ. 762)։

*Այս պետերը ուրիշներ չէին կրնար ըլլալ ըստ* Laurent*ի եթէ ոչ Սեբաստիոյ, Պիզուի և Ծամնդաւի Հայ թագաւորները* (Byz. et les Turcs, 76)։

*Ասիկա ճակատամարտէն առաջ տիրող հոգեբանութեան արտայայտութիւնն էր որ ինչպէս կը տեսնուի նպաստաւոր չէր Հայոց հաւատարմութեան։ Իսկ ճակատամարտին, քանի որ անվստահութիւն ցոյց կը տրուէր, մէջ* «Հայոց գունդերը, որոնք յոյները կ'ուզէին արգիլել գործադրելէ իրենց հերետիկոսութիւնը, առաջին փախչողները եղան եւ կռնակ դարձուցին(1)» (Michel le Syrien, Գ. 169)։

*Այս բոլորը՝ որոնք հակառակ կը կանգնին Հայ միակ պատմագիրին վկայութեան, մեզի համոզել կը թուին թէ Հայերը արդարև փափաքող չէին յունական յաղթանակին որ իրենց կրօնքին և իրենց թագաւորութեան սպառնալիք մը պիտի ըլլար։ Հետեւաբար ինչպէս* Laurent *շատ իրաւամբ դիտել տուած է Հայ նախկին թագաւորները որոնցմէ երկուքը կամովին եկած էին Բիւզանդական երկիրներ, յուսախաբ անոր դէմ դարձան, մինչ Դաւիթ Բագրատունի բացորոշ հակառակորդ մըն էր, երբ բռնի տեղափոխել աքսորական մը։*

*Թէ՛ Մանազկերտի պարտութիւնը — որ սկիզբը եղաւ Բիւզանդական պետութեան քայքայումին — մէկ արդիւնքն էր փոքր Ասիոյ կիսովին օտար բնակչութեան ատելութեան, կը կարծեմ թէ կարելի չէ տարակոյսի տակ դնել։*

«Բնորոշ է, ինչպէս կ'ըսէ Հ. Գելցեր գերման բիւզանդագէտը, որ Ռոմանոս Դիոգինէս չարաբախտութեան կայսրը իր արշաւանքին ժամանակ երդուած էր վերադարձին բնաջնջել Հայկական Եկեղեցին: Հայոց վարդապետները կը պաղատէին Աստուծոյ որ բոլորովին խորտակէ զայն, ինչպէս Յուլիանոսը զոր նզոված էր Ս. Բարսեղը(2): Ահա Հայոց այս գրգռուած տրամադրութիւնը մեզ միջոց կու տայ լուծելու Սելջուկեանց յաջողութեան հարցը, տրամադրութիւն՝ որուն շարժառիթն ու պատճառը Յունական անմիտ եկեղեցական վարչութիւնն էր» (Գելցեր, 286):

*Եւ իրաւամբ կը տեսնուի թէ Հայերը, Մանազկերտի ճակատամարտին հետեւեալ օրը, երբ անիշխանութեան կը մատնուի Արեւելք, կը փորձէին առիթէն օգուտ քաղել յոյն իշխանութենէն և անոր հալածանքներէն ձերբազատուելու համար։*

*Առաջինը անոնց որ Յունաց դէմ կ'ելլէ, կ'ըլլայ Հայ բախտախընդ-*

(1) *Այլուր* (*տես* 300-391) *ըսի թէ Ատտալիատէս և Սկիլիցէս* (698) Կապադովկացւոց *վերագրած են այս փախուստը և ցոյց տուի թէ* Կապադովկացի *բացատրութիւնը համազօր էր Հայու։*

(2) *Հ. Գելցեր կը հաւաստէ ուրեմն Ուռհայեցիի պատմածը։*

դիր զինուորական մը, Փիլարտոս բիւզանդական զօրավարը, քաջ և վարպետ, իր ժամանակներու լաւ զինուորը, բայց շատ անյագ և խիստ փառասէր, որ կը գտնուէր Ռոմանոսի ծառայութեան մէջ և անկէ վերին հրամանատար կարգուած էր (Պկիւլիցէս, 866. Զոնարաս, ԺԸ. 12 և Ալեքսիաս, Զ.) Արեւելքի բանակներուն(1) և իրեն վստահուած էր պաշտպանութիւնը Ռոմանոպոլիսէն (Բալու) մինչև Մելետինէ և Անտիոք երկարող ռազմական կարեւոր գիծին (Laurent, Byzance et les Turcs, 81)։ Փիլարտոս որ երբեմն յունական պաշտօնատար մը և նոյնիսկ թերեւս յունադաւան մըն էր, Ռոմանոսի պարտութենէն յետոյ շահագործելով այն ընդհանուր դժգոհութիւնը որ կը տիրէր Բիւզանդական կայսրութեան մէջ ապրող Հայոց մէջ, մասնաւորապէս կրօնական պատճառներով, և քաջ ծանօթ՝ այն մեծ յուսախաբութեան որուն Հայերը ենթարկուած էին Բիւզանդական երկիրներու մէջ՝ ուր հանգիստ և ազատութիւն գտնելու համար գունդագունդ դիմած էին, ծրագրեց Կապադովկիոյ, Կիլիկիոյ, և հիւսիսային Սուրիոյ և Միջագետքի մէջ հաստատուած Հայ իշխանութիւնները իր գլխաւորութեամբ և Բիւզանդիոնի հեռաւոր հովանաւորութեան տակ միացնել և զօրաւոր դաշնակցային պետութիւն մը կազմել ընդարձակ և ներքնապէս միացած և կազմակերպուած, որ մէկ կողմէն Սելջուկեան յարձակումներուն դէմ կայսրութեան արեւելեան սահմանագլուխին վրայ՝ իբր պատուար պիտի ծառայէր, իսկ միւս կողմէն ալ, ջախջախեալ և հալածեալ Հայ ժողովուրդին նոր օճախ մը պիտի դառնար իբրև նոր հաւաքավայր մը և հայրենիք մը (տես Կոմմագենացի, նոյն, 30)։

Ռոմանոս երբ Մանազկերտի մէջ կը պարտուէր Փիլարտոս «Խարբերդ կը գտնուէր ինքը, իբրեւ պահեստիներու առաջնորդ՝ որով յաջողեցաւ անկանոն կերպով նահանջող ու կամ փախչող Բիւզանդական բանակէն կարեւոր մաս մը վար դնել եւ անոնց նոր ոգի ներշնչելով՝ թումբ կանգնիլ դէպի Արեւմուտք խուժող Սելջուկեան հեղեղին առջեւ(2): Եւ իրօք Փիլարտոս կարողացաւ կասեցնել բարբարոսներու յառաջխաղացութիւնը: ...Այնպէս որ գիտցաւ առիթէն օգտուիլ եւ գրեթէ ինքնիշխան կառավարութիւն մը հաստատել, հետզհետէ իր սահմանները ընդարձակել եւ իրեն կեդրոն ընտրել Գերմանիկիա կամ Մարաշ քաղաքը» (Կոմմագենացի, նոյն, 11)։

Բիւզանդական կայսրութիւնը ի վիճակի չէր Փիլարտոսը անհանգիստ ընելու, մանաւանդ որ անիկա, կատարեալ ազատութեամբ գործելով հանդերձ, գէթ անուանապէս ինքզինքն Բիւզանդական պաշտօնատար մը կը դաւանէր։ Միքայէլ Պարապինաս՝ (1071–1078) որ ընդհանրապէս մեղմ և առաքինի ինքնակալի մը համբաւը թողած է, աչք գոցեց Փիլարտոսի ինքնակամ տնօրինութիւններուն և դէպի

(1) Ըստ Կոմմագենացիի (տես Փիլարտոս Հայր, Հալէպ, 1930, 11 ) Կոմմագենէի և Դ. Հայոց կողմերուն հրամանատարն էր։ Փիլարտոսի նախընթացին և ծագման մասին մանրամասնութիւններու համար դիմել այս գործին, ու իր համեստ ծաւալին մէջ կարեւոր աշխատասիրութիւն մըն է։

(2) Փիլարտոսի հաւաքած զինուորներուն թիւը 20.000 էր կը կարծուի։



անկախութիւն ձգտող քայլերուն, գոհ ըլլալով որ ան այս կերպով Սելջուկեանց դէպի Կիլիկիա և Կապադովկիա յառաջխաղացման ճամբան կը փակէր (Կոմմագենացի, նոյն, 13)։

Նկատելի իրողութիւն մըն էր որ յոյները չէին կրնար յոյս դնել երկրին ամէնէն մեծ զանգուածը ներկայացնող Հայերուն վրայ, իրենց անոնց նկատմամբ բռնած ընթացքին համար։

Ասոր համար էր որ այդ շրջանակին մէջ Հայու մը գործին գլուխ անցնելուն չհակառակեցան։

Միքայէլ Ասորի կ'ըսէ «Հայերը գաղթած էին Վասիլ կայսեր ատեն եւ երբ Միքայէլ կայսեր օրով թուրքերը գրաւեցին երկիրը, Հոռոմները իշխան կարգեցին Փիլարտոսը Կիլիկիոյ վրայ, որպէսզի դիմադրէ թուրքերուն, որովհետեւ Փիլարտոս ռազմիկի համբաւ ունէր» (տես Michel le Syrien, Գ. հտ. 187–8)։

Այսպէս Փիլարտոս ձեռք բերաւ իշխանութիւն մը որ հանդէպ շըրջակայ իշխաններու իշխանապետի մը դիրքը ստացաւ և իբր անոնց վարիչը կարեւոր դեր մը կատարեց։

Մանազկերտի ձախողուածէն յետոյ, Փիլարտոսի հետ միեւնոյն ատեն, ինքզինքնին յունական կայսրութենէն անկախ նկատած են նաեւ Սեբաստիոյ, Ծամնդաւի և Պիզուի մէջ հաստատուած Հայ թագաւորները, որոնք եթէ Փիլարտոսի պէս կարեւոր դեր մը չեն կատարած, և այս պատճառով իրենց գործերը չեն յիշուած, սակայն գէթ սա որոշ է թէ Բիւզանդիոնէն կախում չեն ունեցած և աւելի Փիլարտոսի իշխանապետութիւնը ճանչցած և անոր ստորադաս դիրք մը գրաւած կամ անոր համաձայն և համամիտ գտնուած են։

Սեբաստիոյ Ատոմ և Աբուսահլ և Ծամնդաւի՝ Գագիկ Աբասեան և Պիզուի Գագիկ Բագրատունի թագաւորներուն յունաց դէմ յայտնի ըմբոստութեան յիշատակութիւնը ոչ մէկ տեղ եղած է, սակայն ինչ ինչ մասնաւոր դէպքեր Գագիկ Բագրատունիին, յունաց այս ոխերիմ հակառակորդին, յայտնապէս Մանազկերտի ձախողուածէն յետոյ Յունաց կայսեր հեղինակութիւնը չճանչնալը և միւսներուն ալ Փիլարտոսի հետ համաձայն և համամիտ ըլլալը ցոյց կու տան։

Laurent, (Byz. at les Turcs· 79–80) թուելով Գագիկ Բագրատունիի կարգ մը հակայոյն արարքները, ինչպէս Կեսարիոյ մետրոպոլիտին սպանութիւնը, իր շունը Արմէն կոչած ըլլալուն համար, իր զօրքերուն «խայտառակել զփառաւոր կանայսն Հոռոմոց եւ այլն» նահրաման տալը «խայտառակել զփառաւոր կանայսն Հոռոմոց եւ այլն» Նա- խատել «զնոււ» (Ուռհայեցի 217), և մանաւանդ խորհիլը «զնալ առ Ալպասլան Սուլտանն Պարսից եւ տիրանալ աթոռոյ թագաւորութեանն տանն Հայոց»(1) (նոյն), կը հետեւցնէ թէ Գագիկ ապստամբած էր ընդդէմ Յունաց, Մանազկերտի ձախողածէն յետոյ (1071) և կ'աշխատէր թուրքերու յաջողութեան ընդդէմ Բիւզանդական կայսրութեան և թէ այն

(1) Ուռհայեցի՝ որուն հետ նաև համաձայն է գրեթէ տառական կերպով նաև Սմբատ Գունդստապլ (տես 81) այս տողերուն կը կցեն սա բառերը. «զի բազում անգամ կոչէր զԳագիկ Սուլտանն եւ նա յաղագս քրիստոնէական հաւատոց արգիլեալ լինէր»։ Սուլտանին հրաւէրը արդէն համակարգողութիւն մը կամ գործակցութիւն մը չ'ենթադրե՞ր։ Օրմանեան (Ազգապատում, 1294) «յաղագս քրիստոնէական հաւատոց արգիլեալ լինէր» բառերը այնպէս կը մեկնէ թէ իսլամանալու երկիւղէն է որ հրաժա-

երկրին մէջ ուր ինք հաստատուած էր, չէր դադրած հետապնդելէ յոյներու կոտորածը (Նոյն)։

Իսկ Սեբաստիոյ, Ծամնդաւի և Պիզուի Հայ թագաւորներուն իրարու մէջ և Փիլարտոսի հետ համաձայնութիւնը՝ որ Laurent (Byz. et les Turcs. 80) կ'ուզէ կասկածի տակ ձգել ըսելով որ «եթէ Հայերը գոնէ իրենց միջեւ համերաշխ եւ համաձայն ըլլային կրնային դիմադրել թրքական արշաւին, սակայն դժբախտաբար անոնք ալ իրարու մէջ համաձայն չէին», ամէն տարակոյսէ դուրս է, վասնզի այն դէպքերն որ Փրանսացի Բիւզանդագէտը կը թուէ իբր փաստ իր տեսութեան աւելի կամ նուազ խնդրական են։ Այսպէս իբր թէ Գագիկ Բագրատունի՝ փեսան Դաւիթի (Սենեքերիմի որդւոյն) ըստ Լաստիվերտցիի այս ամուսնութեան պատճառով խռովութեան մէջ էր իր աներձագներուն՝ Ատոմ և Աբուսահլ թագաւորներուն հետ, որոնց հօրենական ժառանգութենէն մաս մը անցած էր այս իշխանին, սակայն ատոր ակնարկող ոչինչ կայ այդ պատմագիրին մէջ։ Laurent կը կարծէ թէ այս պատճառով երբ Թուրքերը Սեբաստիոյ վրայ յարձակեցան և Ատոմ և Աբուսահլ Արծրունիները ապաստանեցան Խաւարտանէքի ամրոցը (1059–1060) Գագիկ իբր թէ զանոնք պաշտպանելու համար բան մը չէ ըրած կամ պատմութիւնը այս տեսակ բան մը չէ արձանագրած։ Ընդհակառակը, կ'ըսէ Գագիկ, 1071ին Ռոմանոս Դիոգինէսի կողմն էր երբ այս կայսրը դժգոհ Արծրունի եղբայրներէն կ'ուզէր զանոնք զրկել իրենց իշխանութենէն։ Այս իրողութիւնն ալ, որուն աղբիւր ցոյց կը տրուի Ուռհայեցի (238) սխալ հասկացողութիւն մը կը թուի ինծի վասնզի Ուռհայեցի ընդհակառակը կը պատմէ թէ Գագիկ՝ կայսեր դէմ կը ծառանայ և «մի՛ լսեր սուտ խօսից ազգիդ քո, վասնզի սուտ են յամենայն 'ի բանս իւրեանց» կ'ըսէ (Նոյն 238) և առաջքը կ'առնէ չարիքին։ Հետեւաբար Laurentի տեսութիւնը ինքնին կը ջրուի։

Ընդհակառակը անոնց համաձայն և համերաշխ ըլլալուն շատ մը փաստեր կան որոնք Laurent անտեսել կամ տարբեր կերպով դիտել ուզած է։

Կրօնական հալածանքներու մէջ իրենց միահամուռ ընդդիմութիւնը, Կիզիստրայի Մանտալեաններուն դէմ Սեբաստիոյ և Ծամնդաւի թագաւորներուն և Փիլարտոսի հաւաքական ձեռնարկը — որ քիչ յետոյ պիտի յիշեմ — ինքնին ցոյց կու տան թէ Կապադովկիոյ Հայ թագաւորները իրարու մէջ և ամէնը միասին՝ Փիլարտոս իշխանապետին հետ կատարելապէս հասկացողութիւն ունէին և համաձայն էին և յոյժ հաւանօրէն ամէնքն ալ կը փափաքէին Փոքր Ասիոյ մուտքին վրայ կազմելու Հայ պետութիւն մը աւատապետական դրութեամբ, ամէն մէկը իր սահմանին մէջ ինքնավար, սակայն իրարու միացած։

Կապադովկեան Հայ թագաւորներէն Ատոմ և Աբուսահլ, և Գագիկ

---

րած է։ Չամիչեան (Բ. 996) որ այդ մտադրութիւնը կը յետաձգէ մինչև Մելիք շահ, Ալփասլանի համար իր տուած նկարագրին անհամապատասխան գտնելով այս տեսակ դիմում մը, այս տողերը կը մեկնաբանէ այսպէս. «Ոչ ոք գտաւ ... ձեռնտու, այլ մանաւանդ որք բարեկամ թուէին նմա, յորդորէին զնա յետ կալ յայնպիսի ջանից, եթէ այդ իւիք յայտնեսցի ասեն, յոյժ կորուսցեն զմեզ եւ ոչ եւս գտցուք այնուհետեւ հանգիստ ուրեք ո՛չ յաշխարհի մերում եւ ո՛չ աշխարհի այլոց»:



Աբասեան ըստ երեւոյթին խոհեմ և շրջահայեաց անձեր կը թուին, որոնք իրենց անկախութեան հետամտելով և Փիլարտոսի հետ համաձայն և համամիտ ըլլալով հանդերձ, զգուշացած են հակայոյն քայլեր առնելէ, հետեւելով Փիլարտոսի օրինակին որ կատարեալ անկախութեան ձգտելով և լիովին Բիւզանդական կեդրոնէն կտրուած ազատօրէն գործելով հանդերձ, միշտ ինքզինքն Բիւզանդական պաշտօնատար կը համարէր։

Գալով Գագիկ Բագրատունիի որուն ատելութիւնը Յունաց դէմ թէև իրաւամբ չափ ու սահման չունէր, խոհեմ ու հաշիւով շարժող մէկը չի թուիր ըլլալ։ Անիկա շարունակ նեղելով իր յոյներուն վրայ գտնուած Յոյները, անոնց մէջ դէպի Հայերը ատելութիւնը սաստիկ արծարծած էր։

Ատոր մէկ արտայայտութիւնը ըլլալ կը թուի, իր պաշտօնին ու դիրքին բերմամբ անշուշտ մոլեռանդ օրթոտոքս կամ մեր պատմագրին (Ուռ. 217) բառերով «հայհոյիչ ... յոյժ ազգիս Հայոց», Կեսարիոյ Մարկոս մետրոպոլիտին «ամենայն տան Արմէն» անունը տալը (Ուռհ. նոյն), որ պատճառ եղաւ թէ՛ իր և թէ՛ Գագիկի եղերական մահուան։

Գագիկ որ իր կարգին աններող մոլեռանդ, ազգայնական և խիզախ մէկն էր, իմանալով յոյն եկեղեցականին այս տգեղ արարքը զայն պատժել կը մտածէ։ Գագիկ առթիւ մը Մարկոս մետրոպոլիտին քով կ'իջեւանի և կերուխումի միջոցին կ'ստիպէ մետրոպոլիտը որ շունը կանչէ, և երբ կը հաստատէ ինչ որ լսած էր, մետրոպոլիտը և շունը տոպրակի մը մէջ դնել տալով շարունակ ծեծել կու տայ շունը, որ մետրոպոլիտը բզքտէ։ «Այսպէս չարեաւ սատակեցաւ չար եւ պիղծ հայհոյիչն եւ եղեւ կերակուր շանց» (հմմտ. Ուռհայեցի 217–220)։ Գագիկ կը կողոպտէ նաև մետրոպոլիտին տունը, և «անհամար զանձ ոսկւոյ եւ արծաթոյ, հոտք ոչխարաց հազար, լուծք գոմշի քառասուն, լուծք եզանց քսան» «բազմութեամբ ձիոց եւ ջորւոց» կը տանի։

Այս ծանր իրողութիւնը բոլորովին կը դժուարացնէ դիրքը Գագիկի որուն դէմ Յունաց ատելութիւնը այլեւս չափ չունէր, այնպէս որ Գագիկ «ոչ եւս մտաւ ի Կոստանդնուպոլիս եւ ոչ գնաց ի կոչն Հոռոմոց»(1)։

Ասով հանդերձ թերեւս Փիլարտոսի ոյժէն և Սեբաստիոյ և Ծամնդաւի թագաւորներուն և այլ Հայ իշխաններու համերաշխութենէն պատկառելով յոյները հանդուրժեցին Գագիկ Աշոտեան Բագրատունիի գոյութեան և քանի մը տարի անցնելէն յետոյ, երբ Սելջուկեանք՝ Սիւլէյմանի առաջնորդութեամբ Փիլարտոսը նեղել սկսած էին, և Կապադովկիոյ մէջ Գագիկի կալուածներուն մեծ մասը գրաւած և իր իշխանութիւնը բոլորովին տկարացած, այն ատեն իրենց վրէժը լուծեցին սպանելով Գագիկը 1079ին։

Գագիկ նոյն տարին Պիզուէն Տարսոն գացած էր տեսութեան Ապըլղարիպ իշխանին որուն հետ խնամութեամբ կապուած էր վասնզի

---

(1) Թէև շատ անհաւանական և իրապէս առասպել սակայն աւելորդ չըլլայ հոս յիշել թէ Հայ պատմագիր մը՝ Վարդան (105) անշուշտ սխալ ազգայնականութեամբ մը կը հաւաստէ թէ Թէոդորա կայսրուհին (1054–1056) երբ Կոստանդին Մոնոմախոսի կը յաջորդէ իբր թէ Գագիկի կ'առաջարկէ որ «Հոռոմ լիցի, եւ այր նմա եւ թագաւորէ Յունաց»:

իր Դաւիթ որդին ամուսնացած էր Տարօնի իշխանին աղջկան հետ և կը մնար իր աներհօրը քովը։

Ապլղարիպ փեսին հետ գժտած և զայն բանտարկած էր։

Գագիկ իբր թէ Տարօն կ'երթայ իր տղան բանտէն արձակել տալու համար (հմմտ. Վարդան, 106) կամ խնամութեան խնդրոյ մը համար (Ուռհայեցի. 263) որ կ'երեւայ թէ յաջողութեամբ չի վերջանար, հաւանօրէն Ապլղարիպի յունասէր տրամադրութեանց պատճառաւ։ Նոյնիսկ կարելի է խորհիլ թէ Գագիկ տարած էր զինակցութեան մը առաջարկը։ Հետեւաբար Գագիկ ետ կը դառնայ «մռնչելով իբրեւ զառիւծ, եւ կալեալ զամենայն իշխանս գաւառին, վարէր զնոսա երկաթի կապանօք առաջի իւր»։

Ասոնք էին հաւանօրէն Տարօնի իշխանին սահմաններուն մէջ եղող Հայ կամ մանաւանդ Յոյն մեծամեծները։

Մարկոս Մետրոպոլիտին մահէն յետոյ այս նոր արարքը բոլորովին կը գրգռէր Յոյներուն վրէժխնդիր ատելութիւնը։

Ուստի երբ Գագիկ իր գունդով, հազար հոգիով Արժիասայ դաշտը, այսինքն Արգէոս լերան ստորոտը գտնուող Կիզիստռա բերդին կը մօտենայ, երեք յոյն բերդապահ եղբայրներ, որդիք Մանտալէի, ամենայն խոնարհութեամբ և քաղցրութեամբ զինքը հանգստանալու կը հրաւիրեն, և գունդէն բաժնելով երեք հետեւորդներով բերդը կ'առաջնորդեն, ուր յանկարծ յիսուն դարանակալներ վրան կը յարձակին, ձիէն վար կ'առնեն և բերդին մէջ կը փակեն(1) (հմմտ. Ուռ. 263–4 և Սմբատ, 86. Վարդան, 106. Կիրակոս, 58)։

Երբ այս ձերբակալման լուրը լսեցին Սեբաստիայէն Ատոմ և Աբուսահլ և Ծամնդաւէն Գագիկ Աբասեան, ութ օրէն, գունդերով Կիզիստրա հասան և «զաւուրս ինչ պատերազմեալ, ոչինչ կարացին առնել»։ Փիլարտոս ալ սպառնալից պատգամներ ղրկեց Մանտալեան եղբայրներուն, որոնք արհամարհելով այս բոլորը Գագիկը խեղդեցին և օր մը ամբողջ դիակը պարիսպէն կախելէն յետոյ պարիսպէն դուրս թաղեցին (1079, Նոյեմ. 24)։

Ասոր վրայ պաշարողները յոյսերնին կորած ետ դարձան։

Այս եղելութեան մէջ անգամ մըն ալ երեւան կուգայ Հայ իշխաններուն համերաշխութիւնը։

Անոնց Կիզիստռայի վրայ փորձած յարձակումը Գագիկը փրկելու համար նշան մըն է թէ անոնք իրարու հետ միշտ համերաշխ և համաձայն եղած են(2)։

Այսպէս Գագիկի իշխանութիւնը վերջ կը գտնէ հազիւ ութը տա-

(1) Կիրակոս (58) իր ձերբակալութիւնը կը պատմէ տարբեր կերպով. իբր թէ Գագիկ որսի ատեն «արբեալ ի տօթ ժամու» ձիէն իջած առանձինն, ծառի մը շուքին ներքեւ մրափած ատեն, բռնուած և բերդ տարուած է և հոն երբ «սթափեցաւ ի գինւոյ» հասկցաւ թէ ձերբակալուած է։

(2) Laurent չհակասելու համար իր նախորդ ըսածներուն, այս պարագան ալ այլապէս կը մեկնէ։ Արծրունիներու միջամտութիւնը Մանտալեաններէ բանտարկուած Գագիկի ազատութեան համար կ'ըսէ թէ ուժգին չէր և նոյնիսկ կը կարծէ թէ անկեղծ չէր (Byzance et les Turcs, 81)։



րիններու (1071–1079) ինքնիշխան ու անկախ վիճակ մը ունենալէ յետոյ։

Իր մահէն քիչ յետոյ վերջ պիտի գտնէին նաև Սեբաստիա կեդրոնով Արծրունեանց և Ծամնդաւի մէջ հաստատուած Գագիկ Աբասեանի թագաւորութիւնները, որոնք Մանազկերտի պարտութենէն յետոյ, Բիւզանդիոնի կայսրէն աւելի յարգանք կ'ընծայէին Փիլարտոս Հայուն, որուն աւատապետութեան տակ աւելի ազատ էին։

Փիլարտոսի ինքզինքին այս իշխանութիւններու բարեկամի և պաշտպանի հանգամանք ու դիրք տուած ըլլալուն գլխաւոր փաստը այն է որ 1079ին երբ Գագիկը ձերբակալեցին Մանտալեան եղբայրները, և Սեբաստիոյ և Ծամնդաւի թագաւորները փութացին Կիզիստրա, պահանջելու համար անոր ազատ արձակումը, Փիլարտոս եւս անոնց հետ էր և եթէ շատացած է միայն սպառնալիք ընելով և գործնապէս չէ մասնակցած կռիւի, պատճառը այն է որ չէ համարձակած հաւանօրէն Փոքր Ասիոյ այդքան ներսերը խորամուխ ըլլալ՝ զգուշանալով Սիւլէյմանի հետ դէմ յանդիման գալէ և ընդհարման մը հարկադրուելու հաւանականութենէն, ինչպէս շատ տրամաբանօրէն դիտել կուտայ Կոմմագենացի (տես Փիլարտոս Հայր, 48)։

Արդարև այդ թուականներուն Փիլարտոսի պետութիւնը վտանգուած էր Արեւելքէն խուժող ոյժերու պատճառաւ, որոնք վերջ պիտի տային նաև Հայ փոքր թագաւորութեանց և անոնց հողերուն վրայ իրենք պիտի տեղաւորուէին։

Կոմմագենացի կը խորհրդածէ թէ «մէկ կողմէն Գագիկի սպանիչներուն դէմ Հայ իշխաններու անզօրութիւնը, իսկ միւս կողմէն ամենաբարձր Հայ անձնաւորութեան վրայ գործուած այդ քստմնելի ոճրին հանդէպ Բիւզանդական արքունիքին աչք գոցելը, քաջալերեցին այդ շրջապատի մահմետական իշխանութիւններ, որ Հայոց մնացեալ իշխանութեանց դէմ միասնաբար յարձակում մը գործեն եւ անոնց գոյութիւնը մէջտեղէն վերցնեն» (նոյն, 48)։

Այս խորհրդածութիւնները սակայն շատ համապատասխան չեն իրողութիւններուն որոնք նոյնիսկ նոյն հեղինակին կողմէ մէջ բերուած են։

Ալփասլան՝ Մանազկերտի ճակատամարտին յաջորդող օրերուն իսկ Դանիշմանդի շնորհած էր Երզնկայէն մինչև Ալիս տարածուող երկիրները, առանց զանոնք իրապէս գրաւած ըլլալու (1071ին)։

Ուրեմն արդէն ծրագրուած էր այդ երկիրներու գրաւումը որ արդարև Դանիշմանդ իրագործեց Նիկիսարի գրաւումէն յետոյ (1071) հետզհետէ առնելով Ամասիա ու Թոգատ, Մարզուան և Զորում քաղաքները. և անխուսափելի էր որ գրաւէր նաև մերձակայ երկիրները, մանաւանդ Սեբաստիան, Կեսարիան և այլ, որոնք արդարև հետզհետէ գրաւուեցան, ինչպէս տեսնուեցաւ։

Բայց ինչ որ ալ ըլլայ շարժառիթը և որքան ալ կասկածելի ըլլայ բարբարոսներու նուրբ հաշիւներ ըրած ըլլալու ենթադրութիւնը, իրողութիւն մը կայ որ անժխտելի է, և ան սա է որ 1079–1080 թուականներուն թուրքերը ամէն կողմէն ընդհանուր յարձակողական մը ձեռնարկեցին և «ազգն թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երկիր» (Ուռհ. 261)։

Անոնք արշաւեցին մէկ կողմէն դէպի Անտիոք և Կիլիկիոյ վրայ, և առաջացան մինչև Տլուք, Մարաշ և Տարօն (նոյն)։

*Փիլարտոսի իշխանութեան դէմ ուղղուած այս յարձակումները որոնք հիւսիսային Սուրիայէ, այսինքն Հալէպի կողմէն կու գային, կարեւոր արդիւնքի մը չյանգեցան, որովհետեւ Փիլարտոս կրցաւ յաջողութեամբ ետ մղել բոլորը և պահպանել Անտիոքը և ուրիշ տեղեր Կոմմագենէի մէջ (տես* Փիլարտոս Հայը, 48)։

*Ուրեմն Փիլարտոս շատ իրաւունք ունէր, Մոնտալեան եղբայրները պատժելու համար Բիւզանդական կայսրութեան հետ կռիւի պատրուակ մը ստեղծելէ զգուշանալու՝ երկու սուրի մէջ չմնալու համար։*

*Այս յարձակումը Փիլարտոսի վրայ գործադրուած ատեն Կապադովկիա գտնուող Հայ թագաւորութեանց դէմ ալ միաժամանակ յարձակում մը եղաւ որ դժբախտաբար յաջողութեամբ պսակուեցաւ, յունական դաւաճանութեան և ապիկարութեան պատճառով։*

*Յարձակողն էր ապահովաբար Դանիշմանդ որ մինչեւ Ալիս առաջացած էր արդէն և Ալփասլանի պատուէրին համաձայն միշտ բարեկամ և զինակից մնացած էր դրացի մահմետական ամիրաներուն, մանաւանդ Մանկուճակի, որ Երզնկայի, Կամախի և Կողոնիայի (Շապին Գարա-Հիսար) տէրն էր, և կ'երեւի թէ ասոր գործակցութեամբն էր որ գրաւեց Սեբաստիոյ և Ծամնդաւի Հայ թագաւորութիւններու երկիրները, և աւերեց զանոնք* (1080)(1)։

*Դժբախտաբար Սեբաստիոյ թագաւորութեան վերջին երկու իշխաններուն՝ Ատոմի և Աբուսահլի վախճանին վրայ որոշ տեղեկութիւններ կը պակսին մեզի*(2), *ինչպէս նաեւ Գագիկ Աբասեանի*(3), *որուն յիշատակութեան այլեւս չենք հանդիպիր* 1080*էն յետոյ, վասնզի ըստ ամենայն հաւանականութեան անոնք վանուած են Սելճուկեաններէն։*

*Հայ իշխանները որոնք փառասէր և հպարտ Սելճուկը՝ Ալփասլանը իր դիմադրութեամբ կասեցուցեր էին Կապադովկիոյ մէջ, հիմա ընկ-*

---

(1) *Ասոր ապացոյց կը համարուի Արծրունեանց հողերէն արեւելեան փոքր մասի մը, Տիվրիկ քաղաքով Մանկուճակի տրուիլը (Հմմտ. Կոմմագենացի, նոյն,* 23. Murray's Handbook of Asia Minor. 42)։

(2) *Դուրեան* (Ազգ. Պատմ. 401-403) *Տուղրիլի դէպի Սեբաստիա կատարած արշաւանքը և անոնց* խաւարտանէք *ապստամբիլը նկարագրելէ յետոյ, կ'ըսէ թէ տակաւին Կոստանդին Տուկիծի իշխանութեան ատեն* (1059-1067) *Ատոմի և Աբուսահլի* «վերջնականապէս կորուած իրենց երկիրն եւ իշխանութեան կալուածները, թափառական սկսան շուրջ գալ յունաց կողմերը, բոլորովին անճանաչելի վիճակի մը մէջ։»

(3) *Օրմանեան* (Ազգապատում, 1293) *կը հերքէ իրաւամբ Սամուէլ Անեցիի* (113) *այն տեղեկութիւնը որուն համաձայն Գագիկ Աբասեան* 1069*ին մեռած է, վասնզի տասը տարի յետոյ* 1079*ին Ուռհայեցի* (264) *կը յիշատակէ զինքն։ Սակայն չեմ գիտեր թէ ինչ աղբիւրի վրայ հիմնուած կ'ըսէ թէ* «անժառանգ մեռնելով, իրենց ջնջուած կ'ըլլայ Ծամնդաւի իշխանութիւնը», *մինչ այլուր* (1301) *կ'ըսէ թէ* «Սեբաստիոյ Արծրունիներուն եւ Ծամնդաւի Բագրատունիներուն անունն ալ, այլեւս բնաւ չի յիշուիր Կիզիստրայի դէմ բրած փորձերնէն ետքը, որով անոնց ալ բնական կամ բռնական մահուամբ միեւնոյն միջոցին մեռած լինելը կը յայտնուի եւ փոքր Հայոց իշխանութիւնները, կ'ունենան այն վախճանը որ սկիզբէն կը նախատեսուէր»: *Քիչ մը իրար կը հակասեն այս տողերը։*



*ճուեցան, վասնզի ինչ որ մեծ Հայաստանի մէջ պատահած էր Փոքր Ասիոյ մէջ ալ կրկնուեցաւ։ Բիւզանդական կայսրութիւնը փոխանակ Հայ իշխաններէն օգտուելու զանոնք զօրացնելու՝ քայքայեց և ահաւոր վտանգին առջեւ փոխանակ մէկ սիրտ մէկ հոգի գերագոյն պայքարի պատրաստելու, գահուն շուրջը ստեղծուած մրցակցութիւններով ներքնապէս կազմալուծուեցաւ և անհատական հաշիւներէ կուրացած գահուն թեկնածուները այնքան ստորնացան որ առանց խղճահարութեան Սելճուկներու օգնութեան ապաստանեցան և զանոնք հրաւիրեցին պետութեան սիրտը, Հայ իշխանութիւններն ալ որս ձգելով անողոք թշնամիներուն առջեւ (Կոմմագենացի,* նոյն, 43)։

«Փոքր Ասիոյ Հայ իշխանութիւնը մահացու հարուածը ստացաւ ա՛յն կողմէն որ ամենէն խոցելի կողմն էր, որովհետեւ Փիլարտոսի աչքերէն ու հասողութենէն բոլորովին հեռու կ'իյնար, այսինքն Պոնտոսէն, եւ յունաց թուլութիւնը կամ դաւաճանութիւնը պատճառ եղած էր որ Դանիշմանդ գրաւէ զայն: Միայն Ալիշան կը պատմէ (398) թէ «**այն ատեններն ամիրայ մը Դանիշման անուն՝ եկաւ բռնեց եւ եկաւ միւս Կապադովկիոյ երկիրը, եւ առաւ Սեբաստիան ու Եւդոկիան, եւ իշխանացաւ երկրին վրայ: Այս է սկիզբը Դանիշմանեանց տանն**»:



Ըստ J. de Morganի
Փոքր Ասիոյ Հայկական
Հարստութեանց վերագրուած
դրամ մը:
(պահուած Փր. թանգարանը)

Այս դէպքը եղած պիտի ըլլայ 1080 թուականին: Որովհետեւ Ուռհայեցի այդ թուականին համար բացորոշ կը վկայէ թէ **«Աստանօր դադարեալ եղեւ թագաւորութիւնն ի տանն Հայոց»** (265):

Ուռհայեցի ուրիշ կարեւոր մանրամասնութիւն մըն ալ կուտայ այս առթիւ. **«Եւ յորժամ բարձրացաւ թագաւորութիւնն Հայոց ի տանէ ՇԻԸ (1079-1080), եղեւ սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս խաչապաշտից յայնկոյս ծովուն Ովկիանոսի. վասնզի ... ազգն թուրքաց աւարածեցան ընդ ամենայն երկիր, որ ոչ մնաց գաւառ ի խաղաղութեան, այլ կայր մատնեալ ամենայն տանն քրիստոնէից ի սուր եւ ի գերութիւն, եւ արգելաւ վաճառ հողագործութեան յերկրէ, եւ հատաւ կերակուր հացի, եւ սով եւ գերութեամբ հատան մշակք եւ վաստակաւորք, եւ տարածեցաւ սով եւ առ հասարակ ընդ ամենայն աշխարհ: Եւ անմարդ եղան բազում գաւառք եւ խախտեցաւ տունն Արեւելեայց, եւ եղեւ աւերակ աշխարհն Հոռոմոց, եւ ոչ ուրեք գտանէին կերակուր հացի եւ կամ դադար հանգստեան մարդոյ՝ բայց ի յՈւռհայ եւ ամենայն սահմանս նորա»** (261): Ապա պատմելէ վերջ թէ ինչպէս քրիստոնեաներ, մանաւանդ կղերականք, գունդագունդ Փոքր Ասիոյ ամէն կողմերէն փախչելով Ուռհայի գաւառը կը դիմէին՝ ուր կ'իշխէր Վասիլ Ապուքապեան (որ Փիլարտոսի ստորադաս-զինակիցն էր, ...) մեր պատմիչը նորէն կը յարէ սա դիտողութիւնը. **«Այս եղեւ սկիզբն աւերման եւ քակտելոյ տանն Արեւելեայց** եւ յունաց» (262): Գագիկ Աբասեան սպանուած էր 1079ի Նոյեմ. 24ին: Սեբաստիոյ Արծրունեաց եւ Ծամնդաւի Գագիկ Աբասեանի անուններն ալ, կ'ըսէ Օրմանեան, չեն յիշուիր այլեւս՝ Կիզիստրայի դէմ կատարուած անյաջող փորձէն ետք, որով անոնց ալ՝ բնական կամ բռնական մահով՝ միեւնոյն միջոցին մեռած ըլլալը կը յայտնուի (*Ազգապատում*, 1301-1309): Մենք, Ասորի

պատմիչին եւ մեր Ուռհայեցւոյն վկայութիւնները համեմատելով, կ'ընդունինք որ առնք Դանիշմանդի արշաւանաց մէջ կորսուեցան: Այս պարագան սա իրողութիւնով ալ կը հաստատուի որ Սեբաստիոյ, Պիզուի եւ Ծամնդաւի Հայ արքունիքներուն վերջին մնացորդները իսկոյն Փիլարտոսի քով կ'ամփոփուին, կանգուն մնացած միակ Հայ իշխանապետին քով: Այսպէս առ յաւէտ վերջացաւ Արծրունեաց թագաւորութիւնը ի Սեբաստիա, Գագիկ Աբասեանինը՝ ի Ծամնդաւ եւ Գագիկ Բագրատունւոյն՝ ի Պիզու. «Եւ Փոքր Հայոց իշխանութիւնները, արդէն յոյներէն հալածուած, կ'ունենան այն վախճանը որ սկիզբէն կը նախատեսուէր՝ երբոր Վանն ու Անին ու Կարսը Սեբաստիայի ու Պիզուի ու Ծամնդաւի հետ կը փոխանակուէին» (Օրմանեան, *Ազգապատում*, 1301): Այս դէպքին կարեւորութիւնը խիստ մեծ է, նկատի ունենալով Սուլէյմանի ձեռքով արեւմտեան Փոքր Ասիոյ նուաճումը: Նախապէս Փոքր Ասիոյ վրայ եղած յարձակումները լոկ ասպատակութիւններ էին՝ աւարառութեան նպատակով, մինչդեռ այս անգամուանը մշտական գրաւում մըն էր, որուն հետեւանքը մինչեւ այսօր ալ կը տեւէ» (*հմմտ*. Gibbon IV· 260). (*Կոմմագենացի*, Փիլարտոս Հայր, 48–51):

*Հայ բանասէրին այս եզրակացութիւնները նոյնութեամբ մէջ բերի, ցոյց տալու համար թէ անիկա ինչպէս զօրաւոր փաստերով կը ներկայացնէ և կը պարզէ Հայ ճորտ թագաւորութեանց անհետացումը, որոնց վրայէն մեր պատմութիւնը լռութեամբ կ'անցնի:*

*Անժխտելի է որ Դանիշմանդի իշխանութիւնը վերջ կու տար Փոքր Ասիոյ դրան վրայ կանգնած Հայ թագաւորութիւններուն, դաւաճան հանդիսատեսութեամբը կամ չափազանց թոյլ պաշտպանութեամբը Բիւզանդական կայսրութեան, որուն դիւրաւ խոցելի այդ կողմէն հարուածեցին կայսրութիւնը Արեւմտեան Անատոլուին մէջ և կատարելապէս յաջողեցան:*

*Եթէ Յոյները Հայոց գործակցութեամբ Սեւ ծովէն մինչեւ Տաւրոսի լեռնաշղթան տարածուող երկիրները կարենային բռնել և չթողուլ որ անկէ ներս խուժէին Սելջուկի բարբարոսները, Փիլարտոս կարող էր պաշտպանելու Տաւրոսէն անդին գտնուող երկիրները, Կոմմագենէն և այսպէս փրկել Արեւմտեան քաղաքակրթութեան օրօրանը:*

*Յոյները չըմբռնեցին հարկադրական գերագոյն պայքարին կարեւորութիւնը և թողուցին որ Արեւելքը քայքայուի, և Թուրքերը ներխուժեն Փոքր Ասիոյ սիրտը:*

*Երբեմնի շէն ու ծաղկեալ Կապադովկիայէն ոչինչ կը մնար, և անիկա կը դառնար անապատ մը, վասնզի Թրքական աղէտին հետ, երկրաշարժներ, որոնց ամէնէն աղէտալին եղաւ 23 Սեպտ.* 1063*ին* (*Սկիլիցէս*, 657-658, *Զոնարաս*, *ԺԸ. գլ.* 9, 679-680, *Կլիգաս*, 605-606, *Ապուլֆէտա*, *Դ.* 190) *և մարախի պատուհասներ* (*Կենտրենոս*, *Բ.* 503, 509, 514) *մեծ չարիք պատճառեցին երկրին և անոր դատարկացման և աւերումին նպաստեցին:*

*Կապադովկիա, անապատ դարձաւ և զրկուեցաւ իր վաղեմի բնակչութենէն, որ Հայ կամ Հայ-Հոռոմ էր մեծ մասամբ:*

*Անիկա կը կորսուէր քրիստոնէութեան համար, ինչպէս Հայաստան կորսուած էր քիչ առաջ, վասնզի Բիւզանդացիք անմիտ կրօնական քաղաքականութեամբ մը չէին կրցած շահիլ բարեկամութիւնը թէ՛ Հայաստանի և թէ՛ Կապադովկիոյ բնիկ բնակչութեան և կատարեալ անվարչագիտութեամբ գրգռած էին ատելութիւնը անոնց:*

*Կապադովկիա այլեւս կ'ենթարկուէր իսլամական տիրապետութեան և իր պատմութեան համար կը բացուէր բոլորովին նոր էջ մը:*



Դ.

## ԿԻԼԻԿԻՈՅ ՀԱՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ
## ԵՒ
## ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ՀԱՅ ԻՇԽԱՆՆԵՐՈՒ
## ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԸ

1071*ին Ռոմանոս կայսեր գերի իյնալէն յետոյ տեսնուեցաւ որ Հայերը՝ որոնք Փոքր Ասիոյ մուտքին վրայ այնքան ստուար թիւ մը ունէին և կազմած՝ աւելի կամ նուազ կարեւոր իշխանութիւններ, անկախութիւն ձեռք բերելու ձգտում ցոյց տուին:*

*Այս Հայ իշխանութիւններուն մէջ, ինչպէս տեսնուեցաւ, կարեւորագոյնն էր այն մեծ իշխանութիւնը որ կազմած էր Փիլարտոս Հայ զօրավարը, որ բոլոր տեղական իրենց ինքնավարութիւնները պահող և Բիւզանդիոնի բարեկամ և անոր ճորտ իշխանութեանց հետ, բարեկամ և զինակից դառնալով կարծես թէ խոշոր ծրագիր մը կ'երկնէր:*

«Փիլարտոսի եւ հարաւէն անոր սահմանակից Բիւզանդահայ պաշտօնատարներու երկիրները, Կապադովկիոյ երրեակ Հայ թագաւորութեանց երկիրներու հետ միացած, բաւական լայն եւ կուռ երկրամաս մը կը կազմէին (երկու արաբ ամիրաներու երկիրներէն զատ) որ Ալիսի ափունքէն մինչեւ Իսոսի ծոցը կ'երկարէր զոր նեղել ու անցնիլ այն ատեն անկարելի գտան Սելջուկեանք: Մանաւանդ որ, Փիլարտոսի կողմի օրինակը կ'երեւի նոր եռանդ եւ քիչ մը կամքի ոյժ ներշնչած էր Սեբաստիոյ Արծրունեաց եւ երկու Գագիկներուն: Գոնէ Մալաթիոյ Փիլարտոսի ձեռքը ըլլալը ինքնավստահութիւն մը ներշնչած ըլլալու էր անոնց, որովհետեւ ճամբան, այսինքն Արածանիի հովիտէն դէպի Կապադովկիա երկարող մեծ պողոտային միակ բանալին էր այն: Կ. Պոլսոյ կառավարութեան կը մնար լոկ Ալիսի ակնաղբիւրներուն ու Տրապիզոնի մէջ գտնուող նեղ շերտը ամրացնել ու պաշտպանել, եւ որով միայն ծովէ ծով երկարող ամուր պատնէշով մը պաշտպանուած պիտի ըլլային իր Փոքր Ասիական կալուածները: Գործը դիւրին էր, առիթն ալ սքանչելի, բայց եւ այնպէս Բիւզանդեանք չգիտցան շահագործել զայն» (*Կոմմագենացի*, *Նոյն*, 20-21):

*Եւ ինչպէս տեսնուեցաւ Փիլարտոսի գեղեցիկ գործը որ կրնար այնքան մեծ հետեւանքներ ունենալ, վաղանցուկ կեանք մը ունեցաւ:*

«Ալփասլան կը խորհէր՝ եւ իրաւունք ալ ունէր՝ որ Մանազկերտի հաղթանակով վերջնականապէս խորտակուած էր Բիւզանդական կայսրութեան դիմադրութիւնը, ուստի՝ կրնար ակնկալել որ այլեւս յունական երկիրները հասունցած տանձի պէս իր բերանը իյնան: ... արեւմուտքի արշաւանքը յառաջ տանելու գործը դարձեալ ըստ առաջնոյն՝ իր ստորադասներուն կը ձգէր: Կ'երեւի թէ՝ գոնէ մինչեւ Ալիսի բերանը՝ արեւելեան Փոքր Ասիան իր ստացուածքը կը համարէր արդէն եւ անոր համեմատ ալ կարգադրութիւններ կ'ընէր, Յունաց պարպած կամ պարպելիք շրջանակները բաժնելով Թուրք կամ Թուրքման աւատականներուն: Ան գուցէ չէր յուսար որ Փիլարտոսի պէս մէկը պիտի ելլէր իր դէմ դիմադրութիւն փորձելու պատրաստ եւ կարող: Ալփասլանի այս զանցառութենէն

օգտուելով՝ Փիլարտոս յաջողեցաւ Թուրք եւ Թուրքման իշխաններու կողմէ մղուած անջատ կամ հաւաքական յարձակումները վանել եւ զանոնք հարկադրել որ զէնքերնին ուրիշ կողմ դարձնեն: Աստոյգ իրողութիւն մըն է, որ այս Սելջուկ զօրավարները ... չկրցան ... Փոքր Ասիա թափանցել» (Կոմմագենացի, Փիլարտոս Հայը, 11–12)։

Սակայն կատարուածը պարզ յապաղում մըն էր, վասնզի Փիլարտոսի կազմած պետութիւնը ժամանակաւոր ոյժ մըն էր, որ եթէ կրցաւ քիչ շատ կարեւորութիւն ստանալ, անիկա կը պարտէր այդ յաջողութիւնը աւելի պարագաներուն քան թէ իսկական ոյժի մը։

Արեւելքի կողմը Սելջուկեանք տկարացեր էին վասնզի Ալփասլանի սպանութեամբ (1072) գահուն յաջորդութեան շուրջը ծագած կռիւները, Թուրքերուն թոյլ չտուին Բիւզանդական կայսրութեամբ զբաղելու։

Անկէ օգտուելով էր որ Փիլարտոս կրցաւ կերպով մը Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հաստատուած Հայ իշխանութիւններէն կազմել դաշնակցային պետութիւն մը(1) (Կոմմագենացի, Նոյն, 30)։

Ասոր համար նախապէս այդ շրջանին մէջ գտնուող հայազգի կամ այլ ծագումով, Բիւզանդական պաշտօնակալները, երբ կամովին հպատակեցան եւ գործակցեցան իրեն, հաստատեց եւ պահպանեց զանոնք իրենց իշխանութեան մէջ։ Ասոնց ամէնէն կարեւորն էր Մելետինէի կառավարիչը, Գաբրիէլ անուն Յոյնը։ Ուրիշ մըն ալ՝ հայազգի Թորոս Կիւրապաղատը, որ թերեւս Խարբերդի կառավարիչն էր, ըստ Կոմմագենացիի (Նոյն, 63):

Անկէ զատ արեւելեան Հայաստանէն արտագաղթող Հայ իշխաններուն, որոնք իրենց զօրքերով կը մեկնէին, Փիլարտոս մեծապէս

(1) Laurent (Byz. et les Turcs, 82–90) բոլորովին տարբեր կը ներկայացնէ Փիլարտոսի դերը, եւ դժուար կը համարէ որ ոեւէ կերպով իր դաշնակիցները կամ իր ճորտերը եղած ըլլան Ապլղարիպը, Օշինը, Գագիկը (Գուրգէնի որդի՞), Էպիխտը (86)։ Laurent Կոմմագենացիին հակառակը ըլլալով կը խորհի թէ ան կերտած էր իր իշխանութիւնը միայն իր շատ մը հայրենակիցները կործանելով, առաջին գիծին վրայ ըլլալով Տաւրոս հաստատուած հին Հայ թագաւորները։ «Անոնց դէմ ոչ մէկ նշուած արարք թշնամութեան ոեւէ կողմէ նշանակուած չէ վասնզի Փիլարտոսի գործակիցները իր մահէն յետոյ պէտք չեն զգացած պատմել այս տեսակ չարաճճիութիւններ որոնց մասնակցած կամ որոնցմէ օգտուած էին: Սակայն եւ այնպէս յայտնի նշաններ կան ցոյց տուող թէ ինչ եղած է Փիլարտոսի եւ կուսակիցներուն դերը: Ապլղարիպ, որ գործած է ընդդէմ Գագիկ Բագրատունիին, Փիլարտոսի ստորադաս Տարսոն քաղաքին իշխանն էր: Երբ Գագիկ սպանուեցաւ 'ի Կիզիստրա, Փիլարտոս ներկայ էր եւ ձեռնարկ մը չըրաւ ազատելու եւ ոչ ալ անոր վրէժը լուծելու համար: Բոլոր բարձր դասու Հայերը կ'անհետանան մէկ կամ երկու տարուան մէջ, եղերական պարագաներու մէջ, որոնց մանրամասն եւ գոհացուցիչ պատմութիւնը չէ եղած: Գագիկ Բագրատունիէն յետոյ, մահը կը հասնի Արծրունի, Աշոտ եւ Ապուսայի եղբայրներու, յետոյ Կարսի Գագիկ թագաւորին: Անտիոքի դուքս Վասակ կ'սպանուի, Անտէրունի մէջ Էպիխտ կը թունաւորուի, Սասունի մէջ Թորնիկ թուրքերէն կ'սպանուի: Փի-



օժանդակած եւ տեղաւորած է զանոնք զինակից կամ դաշնակից ունենալու համար (հմմտ. Նոյն, 63)։

Այս կարգի իշխաններուն ամենակարեւորներէն մին էր Օշինը, Գանձակի Մայրեաց Ջուրք բերդին տէրը, որ Սելջուկեանց երեսէն գաղթելու պարտաւորուեցաւ եւ իր Հայկուն եղբօրը հետ, բոլոր տնով եւ ազատագունդ իշխանօք 1073ին եկաւ Կիլիկիա, ուր «գրաւեց Սարակինոսներէն Լամբրոնի ամուր բերդը», իսկ ուրիշ պատմութեան մը համաձայն Տարսոնի Ապլղարիպ իշխանը զինքը փեսայացուց եւ երկու եղբայրներուն տուաւ Լամբրոն եւ Պապեռոն բերդերը շրջակայ գիւղերով։ Տակաւին Տարսոն էր երբ Տանգրի՝ Անտիոքի կոմսը եկաւ 1097ին։ Անոնք են նախահայրերը Լամբրոնի եւ Պապեռոնի Հայ Կիլիկեան իշխաններուն (հմմտ. Ուռհայեցի, 286. Սամուէլ Անեցի, 117. Չամիչեան, Բ. 995 եւ 1000, Գ. 10. 17-18. Brosset, «Colection», Բ. 453. Chalandon, Comnène Բ. 95. Ազգապատում, 1317. Կ. Թումանեան, Պատմութիւն Արեւելեան խնդրոյն եւ առաջնորդ Հայկական Հարցի, Ա. հտ. 125, 151)։

Փիլարտոս իրապէս օժանդակութեան եւ բարեկամներու պէտք ունէր իր ծրագիրը իրագործելու համար, եւ ասոր համար ոչ մէկ ոյժ արհամարհեց։ Անիկա գիտցաւ նոյնիսկ քաղաքանութիւնը եւ կրօնքը իրարմէ անջատ պահել եւ որչափ ցանկայ շրջակայ եւ դրացի Հայ իշխաններու նոյնպէս նաեւ իսլամ տիրապետներու(1) գործակցութեան, քանի որ անոնք ալ իբր հակառակորդներ Սելջուկեանց իրեն բնական զինակիցներն էին։ Ուստի անիկա հասկացողութեան եկաւ բոլոր Հայ եւ իսլամ մանր իշխանութեանց հետ, որոնք արդէն գոյութիւն առած

լարտոսին մասնակցութիւնը միայն ընդդէմ այս վերջինին հաստատուած է, որուն հետ կռուած է եւ որուն գլուխը ստացաւ, իբր թանկագին նուէր, զայն սպանող թուրքին կողմէ: Բայց եթէ մեզի չէ պատմուած թէ ի՛նչ բրած է միւս իշխաններու դէմ, մենք քաջ գիտենք թէ անոնց մահը իրեն օգտակար էր, քանի որ կ'ազատէր զայն շատ երկիւղ պատճառող մրցակիցներէ: Հայոց հրամանատարութեան համար եւ շահած է, գրեթէ անհետացողներու երկիրներուն հետ, ատելութիւնը անոնց բարեկամներուն եւ անոնց պատմագիրներուն: Անկէ զատ անոր արժանի եղած է իր միակ ընթացքով դէպի թուրքերը: Անոնցմէ ստանալու համար արտօնութիւն ապրելու, անոնց վճարեց հարկ (Ապուլֆէտա, Գ. 255. G. Weil, Geschichte des Chalifen. Mannheim. 1846–1862, Գ. 129) եւ աշխատեցաւ անոնց յանձնել իր հայրենակիցներէն անոնք որ իրեն կը դիմադրէին (ինչպէս Սասունի Թորնիկը): Առով հանդերձ Կիլիկիոյ քաղաքները, Անտիոք, Եդեսիա եւ Մելետինէն կը շարունակէին ինքզինքնին կայսրութեան մաս յայտարարել» (Laurent, «Byzance et les Turcs». 87-89)։

Ինչպէս կը տեսնուի հայեցողութեան կարեւոր տարբերութիւններ կան երկու ուսումնասիրողներուն միջեւ։ Ես նախընտրեցի Կոմմագենացիինը՝ իր պատճառաբանութեանց աւելի զօրաւոր ըլլալուն համար։ Laurentի Հայ թագաւորներու եւ իշխաններու անհամերաշխութեան մասին ըսուածներն ալ արդէն շատ ճիշդ չէին ինչպէս ըսի (տես վերը, 458)։

(1) Ասոնցմէ կ'արժէ յիշել Մուֆարզինի ամիրան [իր ժամանակակիցները Նիզամիւտ Տէօվլէ Նասր (1061–1079) եւ Մանսուր (1079–1096)] եւ Մարտինի ամիրան՝ այն ատեն Շէրէֆ-իւլ-Տէօվլէ Միւսլիմ (1060–1081)։

էին։ «Կը փափաքէր որ իր պետութիւնը ներքնապէս միապաղաղ ըլլայ եւ իր ստորակարգեալները իրենց ժառանգական եւ աւատական իշխանի հանգամանքը պահելով հանդերձ, կեդրոնէն կարգուած եւ վաւերացուած պաշտօնատարներէն եւ պատասխանատու կառավարիչներէն ակնկալուած կամակատար հնազանդութիւն մը ցոյց տան» (*Կոմմագենացի, նոյն*, 31–32)։

*Եւ իրապէս ալ նոյն ձեւով իրեն հնազանդեցնել կամ դաշնակից դարձնել յաջողեցաւ Կապադովկիա տեղափոխուած Հայ թագաւորները, եւ շրջակայ միւս իշխանները, որոնց բարեկամ էր եւ բարեկամ մնաց Փիլարտոս, որ մօտաւորապէս երկու տասնեակ տարիներ տեւող իր իշխանութեան շրջանին ինքզինքն ո՛չ միայն անոնց պետը եւ անոնց պաշտպանը կը նկատէր*(1), *այլ կարծես թէ կը ձգտէր Հայկական մեծ տէրութիւն մը կազմել բոլոր Հայ իշխանութեանց դաշնակցային միութեամբ։*

*Հակառակ անոր որ շատ սեւ գոյներով ներկայացուած են մեր պատմագիրները Փիլարտոսը որ իբր թէ* «էր անհաւատ քրիստոնեայ, ոչ Հայ գիտելով զնա եւ ոչ Հոռոմ» *եւ* «անօրէն եւ ամենաչար իշխան, անդրանիկ որդի սատանայի, կարապետ պղծոյն եւ նեռն դիւաբնակ» (*Ուռհայեցի*, 208), *ան քաղաքագիտական կարողութիւն ունեցող անձ մը ըլլալ կը թուի եւ իր ծրագիրը ամէն կերպով գնահատելի էր, թէեւ զայն գործադրելու համար երբեմն խտիր դրած չըլլայ միջոցներուն մէջ, օրինակի համար անիկա Հայ իշխաններէն՝ Սասունի Թոռնիկ Մուշեղեան իշխանը երբ չհամակերպեցաւ իրեն հետ միանալու*(2), *Փիլարտոս զէնքով զայն հնազանդեցնելու եւ երբ դարձեալ չյաջողեցաւ՝ զայն դաւով սպանելու չվարանեցաւ* (1073)։

*Եւ որովհետեւ Թոռնիկ քեռայրն էր Գրիգոր Վկայասէր, ժամանակակից կաթողիկոսին, հաւանօրէն Փիլարտոսի այս արարքը պատճառ եղաւ որ անիկա չափազանց սեւ գոյներով ներկայացուի, բացարձակապէս սխալ գնահատուելով՝ իր ազգաշէն գաղափարը եւ Հայ պետութիւն մը հիմնելու իր ծրագիրը՝ որուն համաձայն ըլլալ կը թուին շրջակայ Հայ իշխանները* (*Կոմմագ.* 30–34), *որոնց համաձայնութեամբ անիկա կրցած էր տարածել իր ազդեցութիւնը Տաւրոսէն մինչեւ Միջագետք հաստատուած Հայ իշխանութիւններուն վրայ, եւ Հայ թագաւորի մը պէս վարուիլ։ Հետեւաբար ուզեց նախկին Հայ թագաւորներուն պէս իր մօտը ունենալ Հայոց կաթողիկոսը եւ հրաւիրեց Գրիգոր Վկայասէրը իր քով, որ սակայն չգնաց եւ գրեց Փիլարտոսի թէ* «Դիր իմ հրամանաւն յաթոռ հայրապետութեանն զՏէր Սարգիս զփոխորդին Տէր Պետրոսի» (*Ուռհայեցի*, 252)։

*Արդարեւ այս հրահանգին համաձայն* «եպիսկոպոսաց եւ հարանց վանականաց եւ կրօնաւորաց» *ժողով մը, Ջահան գաւառի Հոնի քաղաքը, Փիլարտոսի մայրաքաղաքին՝ Գերմանիկիոյ մօտ, կաթողիկոս ձեռնադ-*

(1) Laurent *շատ սխալ կը դատէ խորհելով թէ Բիւզանդացիներէն Կապադովկիա տեղափոխուած Հայ նախկին թագաւորներու իշխանապետութեանց վերջ տալուն գլխաւոր պատճառը Փիլարտոսի պետութեան կազմութիւնը եւ զօրանալը եղած է* (Byz. et les Turcs, 81)։

(2) *Փիլարտոս այս հրաւէրին իբր պատրուակ գործածած է ժամանակին կաթողիկոսը՝ Գրիգոր Վկայասէր որուն քեռայրն էր Թոռնիկ* (*Կոմմագենացի, նոյն*, 26–27)։



*րեց Սարգիսը* (1076–1077) *որ տարի մը պաշտօն վարելէ յետոյ վախճանեցաւ եւ Հոնիի հայրապետական աթոռին վրայ իրեն յաջորդեց Թէոդորոս Ալախոսիկ* (1071–1090) *որ երբ Հոնին անցաւ Պոլտաճի ամիրայի տիրապետութեան չուզեց թողուլ իր աթոռը եւ Փիլարտոսի հրամանին հնազանդելով երթալ անոր քովը՝ Մարաշ։*

*Ասոր վրայ Փիլարտոս, Պօղոս Վարագեցին* 1085*ին կաթողիկոս ձեռնադրել տուաւ եւ Մարաշի մէջ եւս հաստատուեցաւ կաթողիկոսական աթոռ մը*(1), *վասնզի Փիլարտոս* 1080*ին Դանիշմանդի կողմէն Կապադովկիոյ Հայ թագաւորութիւններու երկիրները գրաւուելէն յետոյ ունէր տակաւին իր տիրապետութեան տակ Սասունէն մինչեւ Վահկա՝ Անդիտաւրոսի երկայնքը եւ Զմշկածագի՝ Արածանիի հիւսիսային կողմէն մինչեւ Ասորոց Անտիոքը եւ Միջագետաց Եդեսիան։*

«Հիւսիս-արեւելքէն եւ հարաւ-արեւելքէն իրեն սահմանակից էին, Մեծն Սելջուկեանց երկիրները: Հիւսիս-արեւմուտքէն կը սահմանակցէր Դանիշմանդի կալուածին, որ Սեբաստիան կեդրոն ունենալով կը բովանդակէր իր մէջ Կեսարիա, Եւդոկիա, Եոզղատ եւ Նիկսար քաղաքները՝ իրենց գաւառներով հանդերձ» (*Կոմմագենացի*, Փիլարտոս Հայր. 60):

«Հայ իշխանապետին կալուածը՝ երկրորդական աւաններէ զատ՝ կը բովանդակէր իր մէջ նաեւ խիստ կարեւոր ու բազմամարդ քաղաքներ — այսինքն, Խարբերդը, Մալաթիան, Մարաշը, Ուռհան եւ Անտիոքը: Անիկա մեծ մասամբ *հայաբնակ* դարձեր էր, Յոյներու եւ Ասորիներու չափաւոր խառնուրդով մը,

(1) 1085*ին այսպէս վեց Հայ կաթողիկոսներ կ՚ըլլային զանազան կողմեր, Հայ ազգին ցրուումին եւ զանազան իշխանութիւններ ունենալուն հետեւանօք։*

*Այս վեց կաթողիկոսներն էին՝* 1. *Գրիգոր Վկայասէր, որ շրջիկ հանգամանք մը ունէր եւ օրինապէս միակ իրաւատէրն էր։* 2. *Բարսեղ Անեցի, որ* 1081*ին Վկայասէրի հաւանութեամբ օծուած էր եւ Անի կը նստէր, Սելջուկեանց իշխանութեան երկիրներու իբր հոգեւոր պետ։* 3. *Թէոդորոս Ալախոսիկ որ Հոնի կը մնար, իբր Ջահանի Հայոց հոգեւոր պետ։* 4. *Պօղոս Վարագեցի՝ Մարաշ իբր գլուխ եկեղեցականութեան Փիլարտոս իշխանապետին երկիրներու Հայոց։* 5. *Գէորգ Լոռեցի՝ Տարսոն Ապլղարիպի իշխանութեան մէջ։* 6. *Գրիգորիս՝ Եգիպտոս իբր խալիֆային երկիրներու Հայոց կրօնապետ։*

*Ասոնցմէ դուրս էր Աղուանից Ստեփաննոս կաթողիկոսը որ կարելի է դասել Հայ կաթողիկոսներուն կարգին։*

*Ասոնցմէ ամէնէն ազդեցիկը՝ Անիի կաթողիկոսն էր, ընդարձակ երկիրներ ունենալուն համար իր իշխանութեան տակ։*

*Անիկա երբ Հոնի Սելջուկեանց տիրապետութեան ենթարկուեցաւ պաշտօնանկ ըրաւ Թէոդորոսը* «առեալ ի նմանէ զքողն եւ զգաւազանն եւ զսուրբ նշանն Տեառն Պետրոսի» (1090) (*Ուռ.* 291)։ *Թէոդորոս հինգ տարի եւս կ՚ապրի եւ կը վախճանի* 1095*ին* (*Ուռ.* 305)։

*Մարաշի աթոռին վրայ նստող կաթողիկոսը Պօղոս՝ ինքնաբերաբար կը հրաժարի աթոռէն եւ կը վախճանի* 1093*ին։*

*Տարսոնի աթոռը Գէորգի մահով վերջ կը գտնէ եւ Բարսեղ իրականին մէջ կը դառնայ միակ կաթողիկոսը եւ* 1091*ին կ՚այցելէ Հոնի, Մարաշ, Ուռհա,* Կեսարիա *եւ Անտիոք եւ կը դառնայ Անի* (1093) *իր գործը շարունակելու համար։*

իսկ այլազգի բնակչութիւնը շատ ցանցառ էր հոն» (Կոմմագենացի, նոյն, 61)։

*Փիլարտոս որ դէպքերու ձախող դասաւորման հետեւանօք չէր կրցած Կապադովկիոյ Հայ թագաւորները պաշտպանել Դանիշմանդի տան յարձակումներուն դէմ, այդ թագաւորութիւններու սահմաններուն մէջ հաստատուած իշխանական տուներէն անոնք որ իրեն դիմեցին ընդունեց և իւրաքանչիւրին առանձին կալուածներ յատկացուց։*

*Ասոնց մէջ ամէնէն կարեւորներէն էին Գող Վասիլ և Ռուբէն (Նոյն, էջ 63)։*

*Միքայէլ Ասորի արդարև կը հաստատէ թէ Դանիշմանդի կողմէ Սեբաստիոյ գրաւումէն յետոյ* «եկան ոմանք Հայոցմէ, թուով յիսունի չափ մարդիկ, եւ **կը բնակէին անբնակ տեղեր** եւ կը հարուածէին զԹուրքն ու կ'առնէին անոնցմէ իրենց համար պէտք եղած բաները։ Եւ եկան Մարաշի երկիրն ու հոն գտան **«Հայազգի մարդ մը Փիլարտոս անուն**, անձրնեայ ու գեղեցիկ մարդ մը, որ անոնց գլուխ կեցաւ։ Եւ մտան Կիլիկիոյ երկիրը, եւ *Թուրքը տիրած էր երկրին*, եւ անոնցմէ առին *բերդ մը* ու հոն ամրացան։ Եւ անկից առին բոլոր երկիրը քաղաքներովն ու բերդերովը, եւ առին շուրջանակի Կիլիկիոյ շատ գաւառներ . . . »(1) (*Միխայէլ Ասորի*, 399)։ Նոյն պատմիչը քիչ մը անդին նորէն կ'անդրադառնայ այս խնդրին։ «Այդ ժամանակներր Հայոց արքայազուններր որք Վասիլ կայսեր օրով եկած էին Կապադովկիան եւ բնակած Սեբաստիա, Կեսարիա եւ Խաւարսանէք, եւ բռնացած ունէին շատ տեղեր, մտան Կիլիկեցւոց երկիրը։ Անոնցմէ ոմանք, **Ռուբինեանք** կոչուած, որոնք երկու մեծամեծ զարմերէն էին՝ Հայկազունք եւ Սենեքերիմեանք, խնամութեամբ իրարու խառնուած, որոնք կը թագաւորէին Կապադովկիային վրայ՝ մինչ Բագրատունիք Մեծ Հայքի վրայ կը թագաւորէին, եւ հիմա սկսան տիրել Կիլիկեցւոց երկրին եւ (ապա) թագաւորեցան արիական քաջութեամբ։ Ռուբէն նախ, եւ Կոստանդին եւ Լեւոն ու Թորոս. եւ այլք մի ըստ միոջէ» (411)։

Միքայէլ Ասորի, ասկէ զատ, բացորոշ կը վկայէ թէ Փիլարտոս էր որ ապահովեց Ռուբէնի լեռնային Կիլիկիոյ իշխանութիւնը. «Եւ ոմանք ի Կիլիկիա, որ կը կոչուին որդիք **Ռուբէնի, Փիլարտոսէ իշխան դրուած** կարգ մը տեղերու վրայ» (406)։ Միքայէլ Ասորի նոյն բանը կը վկայէ նաեւ Գող Վասիլի եւ ուրիշներու համար եւ կ'ըսէ. «Եւ այն ատեն կային գլխաւոր իշխաններ Հայոցմէ, **Վասիլը որ Փիլարտոսի ժամանակէն ունէր** Քեսունն ու Ռապանը, եւ այլ» (406)(2)։

---

(1) *Նոյնը կը կրկնէ նաև Կիրակոս Գանձակեցի պատմագիրը* (47). «Ի սկսանել թագաւորութեանն Թուրքաց՝ արք յիսուն, Հայ ազգաւ, նեղեալք ի նոցունց, ելին յանապատն ապառազինեալք, եւ եկին ի Մարաշ։ Գտին այր մի քաջ Փիլարտոս անուն Հայ, եդին զնա գլխաւոր, եւ մտեալ ի Կիլիկիա՝ առին զբովանդակ աշխարհն. յորս [*յիսուն մարդոց մէջ*] էին եւ Ռուբինեանք սերեալքն թագաւորազունքն»։ *Ասիկա շատ որոշ ցոյց կու տայ թէ Ռուբէն Փիլարտոսի շնորհիւ տիրացած է իր իշխանութեան։*

(2) *Բնագիրին մէջ այսպէս գրուած էր* «Փիլարտոսի ժամանակէն ի վեր, Հայերն ալ ինչ ինչ տեղեր գրաւած էին։ Ասոնց մէկն էր Գող Վասիլ որ գրաւած էր Քեսունը եւ Ռապանը։ Ասոր ատեն վերաշինուեցաւ Քեսունի պարիսպը, որ փլած էր արաբներու ժամանակէն ի վեր։ Կային ուրիշ Հայեր ալ որ Կիլիկիոյ աշխարհին մէջ գրաւած էին ինչ ինչ տեղեր. ասոնք կը կոչուէին Ռուբինեանք» (*տես* Michel le Syrien, Գ. հտ. 187)։



Մատթէոս Ուռհայեցի կը պատմէ թէ Հայոց արքայական տուներու մնացորդ ազատազունդը ետքէն Գող Վասիլի մօտ կը գտնուէր (371, 372, 404, *հմմտ. Ալիշան*, Շնորհալի, 47)։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Այսպէս, Սենեքերիմեանց եւ կրկին Գագիկեանց մնացորդները, կեդրոնական Փոքր Ասիայէն(1) հալածուած ապաստան գտան Փիլարտոսի քով, որ արդարեւ կանգուն մնացած միակ Հայ իշխանապետն էր։ Փիլարտոս ալ, հարաւէն՝ ինչպէս նաեւ արեւմուտքէն նեղուած, նախախնամական գտաւ Հայ արքայազանց գալուստը, եւ զանոնք անմիջապէս իր պետութեան զօրացման ու աւելի ընդարձակման նպատակին գործածեց. միանգամայն զանոնք գոհացուց՝ դարուն սովորութեան համեմատ իւրաքանչիւրին յատկացնելով մէյ մէկ առանձին շրջանակ՝ ուր պիտի իշխէին **աւատական դրութեամբ**։ Փիլարտոս իր տէրութեան արեւմտեան սահմանագլուխը պահպանելու համար Ռուբէնը Անտիտաւրոսի երկիրը ղրկեց, հարկաւ պէտք եղած զինուորական ուժի մը օժանդակութեամբ։ Իսկ Գող Վասիլի յատկացուց կեդրոնական մաս մը, Քեսունի շրջանակը, սահմանակից Ռապան եւ Հռոմկլայ բերդերով ու Պեհէսնի եւ Հասնմանսուր քաղաքներով, ինչ որ անոր վրայ ունեցած իր մեծ վստահութիւնը կը հաստատէ։

Միխայէլ, Փիլարտոսի եւ անոր աւատականներուն յաջողութիւնները ամփոփելով, կը գրէ. «Եւ անկէ առին բոլոր երկիրը քաղաքներովն ու բերդերովը, եւ առին շուրջանակի Կիլիկիոյ շատ երկիրներ, Մարաշը, Քեսունը, Ապլաստան ու Մելիտինէն, նաեւ Ուռհան Եփրատի անդի կողմը, եւ ուրիշ շատ տեղեր։ **Եւ յանցին Յոյներ ու տուին Փիլարտոսին պարգեւներ եւ զանի Սեւաստոս(2) կոչեցին**» (399) (*Կոմմագենացի, Նոյն*, 54–57)։

*Այս պարգեւատուութիւնը թերեւս կատարած է Ալեքսիոս Կոմնենոս կայսրը*(3) *որ* 1081*ին Վոտոնիատը վանք մը արգելափակելով կայսր հռչակած էր ինքզինքը և պէտք ունէր իբր զօրավիգ զօրաւոր մարդերու* (*Նոյն*, 57-58)։

*Այս կերպով Ալեքսիոս Կոմնենոս իմաստութիւնը կ'ունենար Փի-*

---

(1) *Այսինքն Կապադովկիայէն։*

(2) Սեւաստոս *տիտղոսով յիշուած է նաև Վասիլ մը* (*Մատթ. Ուռհայեցի*, 332)։ *Պրոտոսեւաստոս տիտղոսը տրուած է Կիլիկիոյ Թորոս Ա. իշխանին* (*Նոյն*, 360)։ *Օշին՝ Տարսոնի և Լամբրոնի իշխանն ալ* Սեւաստոս *տիտղոսը առած է։ Սեւաստոս կը նշանակէր* Կայսերական։

(3) Laurent (Byz. et les Turcs. 89) *կը կարծէ թէ այդ պաշտօնատուութիւնը կատարած է Վոտոնիատը։ Փիլարտոս տեւական կերպով չէր կրնար հրամանատարութիւն ընելու հաւանականութիւնը ունենալ եթէ յանուն Բիւզանդիոնի և իբր անոր ներկայացուցիչ չի գործեր։ Ուրեմն Կ. Պոլիսէն խնդրեց աստիճան* (investiture) *ինչ որ ստացաւ դիւրաւ Նիկեփոր Վոտոնիատէն որ շատ երջանիկ էր վերստին գտնելով այդ կողմերուն մէջ, ուր այլեւս գրեթէ բնաւ չէր իշխեր, յայտնի զօրութեամբ ճորտ մը՝ յանուն Յոյն կայսեր Թուրքերուն դիմադրելու կարող բանակով մը։ Լօրան այս տեղեկութիւնը քաղած ցոյց կու տայ Ատտալիատէսէն* (301), *Սկիղիցէսէն* (741), Chalandon*էն*, (Alexis Comnène, 96 *եւայլ*)։ *Այս տեղեկութիւնը որ պարգեւատուին անձը կը փոխէ պատմական իրողութիւնը յեղաշրջելու հանգամանք չունի և Կոմմագենացիի խորհրդածութիւնները իրենց ոյժը կը պահեն.*

*լարտոսը — որ Վոտանիատի օրով հասարակաց թշնամի մը կը նկատուէր — դարձեալ Բիւզանդական կայսրութեան ներկայացուցիչ ճանչնալու և ընդունելու իբր օրինաւոր տէր Ծոփաց, Մելետինէի, Կոմմագենէի, Կատաւոնիոյ և լեռնային Կիլիկիոյ նահանգներուն (Նոյն 58)։*

*Փիլարտոս, որ իբր կացութեան և իր դիրքին տիրեակ, միշտ չէ ուզած Բիւզանդական կայսրութեան դէմ թշնամական դիրք բռնել, անշուշտ անոնց օժանդակութիւնն ալ ապահովելու համար, իր գործին մեծութեան արժանի կերպով չըմբռնուեցաւ և լքուած Բիւզանդական կայսրութենէն, ընկճուեցաւ և իր հոյակապ ու Բիւզանդական կայսրութեան համար օգտակար ծրագիրը վիժեցաւ։*

*Եթէ Յոյները այս նենգ վարուողութիւնը չունենային, թերեւս այսօր աշխարհի ճակատագիրը տարբեր եղած պիտի ըլլար, վասնզի Փոքր Ասիոյ մէջ Եփրատի արեւմտեան եզերքին վրայ հաւաքուած Հայերը աւելի մեծ թիւ մը պիտի ունենային և թերեւս պիտի կարենային անկեղծ գործակցութեամբ Յունաց հետ կազմել զօրաւոր պատուար մը բարբարոս Սելջուկներու առաջացման դէմ։*

*Փիլարտոս քանի տարի յապաղեցուց իր սահմանափակ ոյժերով Սելջուկեան յառաջացումը և թերեւս մի քանի հարիւր տարի ուշ ձգեց Բիւզանդական պետութեան կործանումը՝ որ Մանազկերտի պարտութենէն յետոյ գուցէ մէկ թափով իրագործէին Սելջուկեանք։*

*Յոյները՝ իրենց մեծամիտ ամբարտաւանութեան մէջ մոլորած, չկրցան ըմբռնել վտանգին մեծութիւնը և չունեցան զայն հեռացնելու համար վայրկեանին ու պարագային ներշնչած արթնամտութիւնը, որպէսզի ընդգրկէին իրենց մինչեւ այն ատեն հետեւած ուղղութենէն տարբեր քաղաքականութիւն մը որ հնարաւոր դարձնէր պետութեան փրկութիւնը, որ թերեւս կարելի պիտի ըլլար եթէ լրջօրէն անոր մտատանջութիւնը ունեցող մարդիկ գտնուէին պետութեան գլուխը, կայսրութեան հիմերը պեղուած այս օրերուն։ Սակայն կացութեան ծանրութիւնը ըմբռնող մարդիկ չգտնուեցան դժբախտաբար։ Այնպէս որ 1084ին Սիւլէյման Իբն Գութուլմիշ անակնկալ կերպով գրաւեց Անտիոքը և տիրեց Կիլիկիոյ (Հմմտ. Ուռհայեցի, 269–271. Միխայէլ Ասորի, 398. Կոմմագենացի,* Փիլարտոս Հայր, 65–66) *Փիլարտոսի դաւաճան որդւոյն՝ Եդեսիոյ դուքս՝ Վարսամի կամ Պարսամի մեղսակցութեամբ (տես նոյն, 66. նաեւ Աննա Կոմնենոս.* «Alexias» Libr. V. Chap. 9. 168–9, Թարիխի Օսմանի էնճիւմէնի, Ա. 174 Enc Brit. 11th ed, Vol. XXIV. 610. Գամուս Իւլ Ալամ, *հատ. Դ.* 2598 *Բ. և Կիպըն,* VI. 261)։

*Նոյն ատեն՝ հաւանօրէն Դանիշմանդի զօրավարներէն Պոլտաճի ամիրան կը գրաւէ Ջահան գաւառը*(1) *(Հմմտ. Մատթէոս Ուռհայեցի,* 271)։

*Հետեւաբար Սիւլէյման և Դանիշմանդ զինակցաբար կու գան Փիլարտոսի երկիրներուն վրայ, ինչպէս կը հաստատէ Միխայէլ Ասորի* (399) *ըսելով թէ* «յետ այսորիկ ժողովեցան ի վերայ Փիլարտոսին յամենայն կողմանց Թուրք, եւ առին ի նմանէ զկէս աշխարհի նորա»:

*Քիչ յետոյ Սելջուկեանք պառակտեցան և Դդուշ՝ Ալփասլանի որդին և Մելիքշահի եղբայրը և Սիւլէյման իրարու հետ պատերազմի բռնուեցան, վասնզի Դդուշ Անտիոքը և Հալէպը պահանջեց։*

(1) *Արդի Ալպիսթանի և Կէօքսունի գաւառակները։*



*Յաղթանակը մնաց Դդուշի և Սիւլէյման մեռաւ պատերազմին մէջ կամ անձնասպան եղաւ* (1086)։

*Սակայն Փիլարտոսի կացութիւնը չբարուոքեցաւ, վասնզի Դդուշ նոյնքան թշնամութեամբ վարուեցաւ իրեն դէմ որքան Սիւլէյման։*

*Փիլարտոս որ Յոյներէն լքուած էր և կորսնցուցած իրեն զինակից Մարտինի և Մուֆարղինի երկու իսլամ ամիրաները՝ հարկադրուեցաւ իր հպատակութիւնը առաջարկել Սելջուկեանց մեծ Սուլթանին և կամ Պաղտատի ամիրապետին, գէթ փրկելու համար իր պետութեան վերջին մնացորդները։*

*Ուստի դիմեց Մելիքշահին որուն բարի համբաւը և արդարասիրութիւնը հռչակուած էր ամէն կողմ։*

*Անիկա իր հետ առնելով* «բազում զանձ ոսկւոյ եւ արծաթոյ եւ ազնիւ ձիս եւ ջորիս, եւ հանդերձս երեւելիս եւ պայծառս», *գնաց ներկայանալ մեծ Սելջուկին, իր տեղը Ուռհայի մէջ փոխանորդ ձգելով* Պառակամանոս *անուն մէկը* (1086)։

*Սակայն* Պարսամա *անուն իշխան մը կ'սպաննէ Պառակամանոսը։ Մելիքշահ Փիլարտոսը այդ սպանութեան համար պատասխանատու բռնելով.* «ընկեց յերեսաց եւ ի փառաց իւրոց» *և թէ՝ Փիլարտոս* «յամենայն դիմաց յուսահատեալ», *կրկին Մելիքշահի հաճելի ըլլալու համար,* «եղեւ ուրացող Քրիստոսի» *բայց իր ակնկալութիւնը ի դերեւ ելաւ.* «կարծէր այնիւ փառաւորիլ ի Պարսից, զոր ոչ փառաւորեցաւ» *(Մատթէոս Ուռհայեցի,* 282)։

*Սակայն այս պատմութիւնը հաւանօրէն ճիշդ չէ։ Աւելի տրամաբանական կը թուի Միխայէլ Ասորիի պատմութիւնը, որ անոր երկիրներուն կէսը գրաւուելէն յետոյ կը յարէ թէ* «զնաց ի Բաղտատ առ խալիփայն, եւ տկարացաւ ի հաւատոցն վասն երկրին, եւ ա՛ռ ի նմանէ գիր զի առցէ զերկիրն դարձեալ, եւ մինչ նա եկն, առեալ էին եւ ի մնացեալ աշխարհացն, եւ ոչ ետուն նմա»:

*Շատ իրաւամբ Կոմմագենացի դիտել կու տայ թէ* «Շատ պարզ է եղելութիւնը: Մելիքշահ կամ Ամիրապետը՝ ճորտութեան իբր նախապայման հաւատափոխութիւնը առաջարկեց Փիլարտոսի: Նման առաջարկ մը ժամանակաւ Գագիկ Բ.ի ալ եղած էր, բայց այն մերժեց այդ գնով կրկին «տիրանալ աթոռոյ թագաւորութեանն տանն Հայոց», թէպէտ «բազում անգամ կոչէր զԳագիկ՝ Սուլտանն»: Փիլարտոս զիջաւ եւ թէեւ Սուլթանէն հրովարտակ ալ ստացաւ՝ նախկին կալուածներուն տիրանալու համար, բայց «ոչ ետուն նմա»: Ո՛վ էր այս չտուողը: — Դդուշն էր հարկաւ, որ չէր ուզեր Հայ Փիլարտոսի մը իշխանութեան շարունակուիլը» (Փիլարտոս Հայր, 75–76):

*Այսպէս անփառունակ կերպով վերջացաւ Փիլարտոսի իշխանութիւնը* (1086) *վեց տարի միայն յետոյ Կապադովկիոյ Հայ ճորտական թագաւորութիւններէն։*

*Փիլարտոս որուն համար* «ասեն թէ զղջացաւ ու դարձաւ ի հաւատն իւր եւ գնաց յապաշխարութիւն ի վանս» *(Միխայէլ Ասորի,* 399), *լուսաւոր և հեռատես դէմք մըն էր, որ ամէն ջանք ու ճիգ ըրաւ Հայ մեծ պետութիւն մը կազմելու և իբր պատուար ծառայելու Բիւզանդական կայսրութեան, որ սակայն չկրցաւ իր երբեմնի զօրավարին և կորովի զօրականին՝ չափազանց ողջմիտ ու առողջ մտածութիւնը, Հայ կըռւող ոյժերը նեցուկ ունենալով և անոնց ազատասէր զգացումներուն յագուրդ տալով, պատուար պետութիւն մը կազմելու ծրագիրը, գնա-*

հասնել բուռ արժանւոյն։ Այնպէս որ վիժեցաւ այդ ծրագիրը՝ երբ ան արդէն մարմին առած և գործնապէս իր օգտակարութիւնը ցոյց տուած էր։ Ցոյները գրեթէ բնաւ չաջակցեցան և միայն Ալեքս Կոմնենոս կայսրը սին տիտղոս մը տալով քաջալերեց, մինչ պէտք էր անկեղծօրէն գործակցէր։

Իր պատմութեան ասպարէզէն անհետանալէն յետոյ իր ստորակարգեալներէն Մալաթիոյ ուաստապետ՝ Գաբրիէլ Ցոյն(1), Քեսունի իշխողը՝ Գող Վասիլ(2), Մարաշի տէրը՝ Թաթուլ(3) և Ուռհայի կիւրա-

(1) Գաբրիէլ՝ որ Philarète կոչուած է Փիլարտոսի անկումէն վերջ տակաւին 15 տարի (մինչեւ 1101) շարունակեց իր անկախ իշխանութիւնը։ Անիկա իր իշխանութիւնը առած էր նոյնիսկ խալիֆայէն (Michel le Syrien, Գ. 179–181)։ 1097ին Ռումի Սուլթան՝ Գըլըճ Ասլան թելադրութեամբ Դանիշմանդ Ահմէտ Կազի Կիւմիւշթէկինի, որուն քով ապաստանած էր խաչակիրներէն պարտուած, յարձակեցաւ իր վրայ և պարտուեցաւ (Վարդան, 109–110)։ Ասկէ զատ երբ խաչակրութեան վերջապահներէն Պաղտուին, ուղղակի Պաղտատի վրայ քալելու առաջադրութեամբ, դէպի Կեսարիա կ'արշաւէր, Ռումի Սուլթանը և Դանիշմանդը ստիպուեցան անոր դէմ դարձնել իրենց զէնքերը (Վարդան, 112. Միխայէլ Ասորի, 406)։ Յետոյ Դանիշմանդ որ Խարբերդը գրաւած էր եկաւ Մալաթիոյ վրայ երեք տարի յաջորդաբար և սաստիկ նեղեց քաղաքը (Միխ. Ասորի, 406)։ Վերջապէս 1101ին Գաբրիէլ, Մալաթիան իրենց տալու խոստումով օգնութիւն խնդրեց հիւսիսային Սուրիա հաստատուած խաչակիրներէն որոնց հետ խնամեցած ալ էր՝ իր Մորֆիլ կամ Մորֆիա աղջիկը ամուսնացուցած ըլլալով միւս Պաղտուինին հետ (Ալիշան, Սիսուան, 47. Վարդան, 110)։ Անտիոքի իշխան Պեմունդ և քեռորդին ու զօրավարը Ռիչարտ «անմտաբար անպատրաստութեամբ» (Ուռ. 334) ելան թուրքին դէմ և չարաչար յաղթուեցան և գերի իյնալով Նիկսար տարուեցան երկաթէ կապանքներով։ Գաբրիէլ ստիպուեցաւ Դանիշմանդի յանձնել Մալաթիան և անցնիլ Կ. Պոլիս (տես Կոմմագենացի, Փիլարտոս Հայր 88–89)։ Ոմանք կ'ըսեն թէ Գաբրիէլ սպանուած է 1103ին Դանիշմանդ Ղազի Բ.էն և երկու տարի վերջ (1105ին) Գըլըճ Ասլան Իկոնիոյ Սուլթանը գրաւած է Մալաթիան։

(2) Գող Վասիլ Փէլարտոսէն 30 տարի վերջը (մինչեւ 1116) դեռ շարունակեց անոր գործը, միեւնոյն ուղղութեամբ թէեւ աւելի համեստ սահմաններու մէջ։ Գրեթէ անոր չափ առաջնակարգ կարողութեան տէր իշխան մը, որ չէ կրցած տեւական իշխանութեան մը հիմնադիրը ըլլալ, վասնզի անորդի մեռած է (տես իր մասին ընդարձակօրէն Աւետաբեր շաբաթաթերթ, 1913 տարի, 1196 և 1218)։ Վասիլ մեռաւ 1112 Հոկտ. 12ին և իրեն յաջորդեց Վասիլ «տղայ», որուն իշխանութեան տակ էին Սամոսատ, Հիսնի-Մանսուր, Քեսուն, Ռաբան, Մարաշ։ Վասիլ «տղայ» Եդեսիոյ Պաղտին կոմսին դաւաճանութեամբ կը կորսնցնէ իր իշխանութիւնը (1116) և պահ մը Կիլիկիա իր աներոջ Լեւոն իշխանին քով մնալէ յետոյ կ'երթայ Կ. Պոլիս ուր կայսրէն կը պատուըւի (տես Ազգապատում, 1317–1318 և Չամիչեան, Գ. 31)։

(3) Թաթուլ «իշխանաց իշխան» տիտղոսով յիշուած օրինաւոր յաջորդը ըլլալ կը թուի Փիլարտոսի մինչեւ 1101 թուականը երբ խաչա-



պաղատը՝ Թորոս(1) և Կոռոզոմոլի, Բարձրբերդի և Կոպիտառի իշխանը Ռուբէնը, և այլն, ստեղծուած կացութեան համակերպեցան և ջանացին անջատ անջատ կառավարել իրենց համայնքները, գերիշխանութեան տակ բարի վեհապետի համբաւով և քրիստոնէից պաշտպան ու բարեկամ մեծ Սելջուկին՝ Մելիքշահի (1072–1092), որուն հարկատու դարձան(2)։

Այս շրջանին, կը տեսնուի հակադարձ շարժում մը։

Կապադովկիոյ սահմաններուն մէջ կազմուած Հայ ճորտ ստուեր թագաւորութիւնները և Փիլարտոսի ճորտերու երկիրները, որոնք կեդրոնավայր, տեղի ապաստանի, և կրօնական ու ուսումնական կե-

կիրներէն, որոնք հիւրասիրուած էին իր քով երեք տարի առաջ, վանուեցաւ և Ֆռանկները գրաւեցին ամբողջ Ջահանի գաւառը՝ Անաւարզայէն մինչեւ Այպլսթան։ Միեւնոյն տարին՝ Մարաշի կոմսը Պեմունդ՝ ուրիշ խաչակիր իշխաններու հետ գերի ինկաւ Դանիշմանդի ձեռքը։ Ասոր վրայ Ալեքսիոս Կոմնենոս կայսրը Բուտումիտ զօրավարը ղրկեց Մարաշ, որ նուաճեց զայն և Թաթուլը վերահաստատեց իր իշխանութեան մէջ՝ իբր Բիւզանդական կուսակալ (1103) բայց Ցոյները հազիւ տարի մը կրցան պահել Մարաշը, որ 1104ին գրաւուեցաւ Անտիոքի լատին իշխանին և Թլպաշարի Ճոսլին կոմսին կողմէ։ Թաթուլ՝ Տիրամօր մեծարժէք պատկերը որ հոն կը պատուուէր ծախեց Թորոս Ռուբինեան իշխանին և ինքը անցաւ Կ. Պոլիս (Վարդան. 113. Ալիշան, Սիսուան, 49. Օրմանեան, Ազգապատում, 1327. Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, 87–88)։

(1) Փիլարտոսի յաջորդներուն մէջ առաջին անգամ ընկճուողը եղած է Ուռհայի Թորոս կիւրապաղատը։ Անիկա որդին էր Հեթում անուն Հայու մը և հաւանաբար նախապէս կառավարիչն էր Խարբերդի և յետոյ Փիլարտոսէն կարգուած էր կիւրապաղատ Ուռհայի (Միխ. Ասորի, 403)։ Ցոյները ճանչցած պէտք է ըլլան իր հանգամանքը վասնզի «իշխանն Հոռոմաց» կը կոչուի (Ուռհայեցի, 300 և 316)։ Թորոս Սելջուկեաններէն պարտուած կը քաշուի իր զօրքով Մելետինէի Գաբրիէլ իշխանին քով որ իր աներն էր. 1094ին Դգուշ՝ Թորոսը կը հաստատէ իր իշխանութեան մէջ (Ուռ. 300)։ Դգուշի սպանութենէն յետոյ Թորոս ապաստան տուաւ իր բարերարին տղուն Ռատուանի և անոր օգնեց որպէսզի «Նստի Սուլտան ի Հալպ և ի սահմանսն նորա» (Վարդան, 108)։ Քիչ վերջը Ցունաց կողմէ պաշտպանեալ Ալփիրակ անուն յափշտակիչը Հալէպի գահուն, թունաւորեց։ 1095–6 թուականներուն իր վրայ յարձակեցան Թուրք ամիրաներ որոնց յաջողեցաւ յաղթել, սակայն վերջապէս վախնալով որ պիտի ընկճուի խաչակիրները հրաւիրեց իր մօտ։ Պաղտուին կոմսը Եփրատացիներու կողմը երբ քալեց, Թորոս անոր օգնեց որ Թլպաշարի տիրանայ և յետոյ Ուռհայի մէջ հիւրասիրեց զայն։ Սակայն ապերախտ Ֆռանկը իր բարեկամութեան հաւաստիքներուն և երդումներուն հակառակ՝ չարաչար սպանել տուաւ Թորոսը և յափշտակեց Եդեսիոյ իշխանութիւնը, 1099ին (Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, 86–87)։

(2) Նոյնիսկ կարելի է խորհիլ թէ կարգ մը իշխանութիւններ ալ յետոյ կազմուած են։ Այսպէս՝ Ծովք գիւղակին մէջ (Այնթապի մօտերը)

բաղարթման աշխատանոցներ դառնալ սկսած էին, և ազգային նոր կազմակերպութեան մը ծնունդ տալու յոյսեր կը ներշնչէին, միայն ժամանակաւոր և վաղանցիկ կերպով հայադրոշմ կեանքի մը սերմնաբաններ ըլլալու փառքը ունեցան և Մելիքշահի Սելջուկ պետութեան մէջ հաստատած կարգ կանոնը և վարչական կազմակերպութիւնը և դէպի քրիստոնեաները ցոյց տուած սէրը և պաշտպանութիւնը, պատճառ եղան որ Հայերը՝ պահ մը նախընտրեն խոյսալ այդ տիրապետութիւնը և նորէն Մեծ Հայաստանի մէջ կազմակերպուելու փորձեր ընեն, ինչպէս հոն տեղափոխեն կրկին Հայոց կաթողիկոսութիւնը որ Փոքր Հայքի կամ Կապադովկիոյ մէջ հաստատելու ձեռնարկներ ըրած էին։

Ծամնդաւէն կամ Մուտառասունէն և կամ Հոնիէն կամ Մարաշէն դարձեալ Անի տեղափոխութիւնը Ամենայն Հայոց կաթողիկոսութեան տեղատուութիւն, կամ վերադարձ մըն էր, որ սակայն կարճ տեւեց։ Բարսեղ Անեցի կաթողիկոս (1085–1113) նոյնիսկ ինքն պիտի ստիպուէր դարձեալ դէպի Արեւմուտք դիմել և Քեսունի իշխան Գող Վասիլի քով ապաստան փնտռել և իր յաջորդը Գրիգոր Գ. Պահլաւունի (1113-1166) պիտի հաստատուէր Հռոմկլայ (1147ին)(1)։

Մակընթացութիւնը սկսած էր դարձեալ, վասնզի Մելիքշահի մահէն (1092) յետոյ իր պետութիւնը՝ քայքայուած և ներքին խռովութիւններ և անկարգութիւններ վերստին Հայաստանը դժոխքի վերածած էին և Սելջուկեանց պետութեան ներքին խռովութիւններէն օգտուելով Տաւրոսի կողերուն վրայ հաստատուած Հայ իշխանութիւնները, որոնք «գիտցած էին ճկիլ եւ խոնարհիլ՝ ապագային կարենալ յաղթելու համար, երբ Սելջուկեան արշաւանքին թափը անցաւ եւ Մեծ Սուլթանին մահուամբ իր պետութիւնը պառակտեցաւ, ո՛չ միայն գլուխ վերցուցին եւ իրենց անկախութիւնը վերստացան, այլ նաեւ ջանացին իրենց սահ-

---

կը պայազատէր 1095ին ի մօրէ Պահլաւունի և Գր. Վկայասէրի քեռորդի Ապիրատ իշխան որուն իշխանութեան սկիզբը մեզի անծանօթ կը մնայ։

1117ին Պիրը (=Պիրէճիկ՝ Եփրատի վրայ) կը գտնենք ձեռքը Ապլխարիպ և Լիկոս անուն Հայ իշխաններու (որդիք Շնորհալիի հօրեղբայր Վասակ իշխանին) որոնք չենք գիտեր երբ այդ քաղաքը կը գրաւեն և կ'ամրացնեն։ Ասոնք այդ թուականին Պաղտին լատին իշխանին կողմէ երկար ատեն պաշարուելէ յետոյ ընկճուած քաղաքը յանձնելով Պաղտինի, մեկնեցան Կիլիկիոյ Թորոս իշխանին քով։ Պաղտին առած է նաև հողերը Բագրատ Հայ իշխանին որ կը նստէր Արեւընտան Կարսի մօտ և Կոստանդին իշխանին, որ կը նստէր Կարկառ բերդին մէջ (Չամիչեան, Գ. հտ. 40) երկուքն ալ չենք գիտեր ո՞ր թուականէն սկսեալ։

(1) Միխայէլ Ասորի, Անտիոքի պատրիարքը (1166–1199) իր պատմագրութեան մէջ Հայոց Կիլիկիա հաստատութեան վրայ խօսելէ յետոյ կը յարէ թէ «այս ժամանակներէն ի վեր է որ Հայք տէր եղան այս տեղերուն՝ Կիլիկիոյ և Ասորիքի մէջ։ Հարիւր տարի ետքը — որովհետև կաթողիկոսը կը նեղուէր Մեծ Հայքի մէջ՝ Թուրքերուն կողմէն, որ տիրած էին հոն — Կիլիկիոյ հայ իշխանները իրենց քով բերին իրենց կաթողիկոսը» (Michel le Syrien, Գ. հատոր, 188)։



մանները ընդարձակել. ափսո՛ս որ համագործակցութեան ոգին չէր տիրեր այլեւս անոնց մէջ եւ ո՛չ ալ զօրաւոր ձեռք մը կար որ ստիպէր զանոնք մէկ նպատակի եւ քաղաքական մէկ ծրագրի վրայ կեդրոնանալ: Այսպէս, երբ անջատաբար ապրիլ որոշեցին, մէկիկ մէկիկ ալ կործանեցան՝ վերապրող միակ բացառութեամբ մը եւ այն ալ՝ շատ պարզ պատճառով մը» (Կոմմագենացի, նոյն, 85):

Ֆ. Շալանտոն, շրջանին Բիւզանդական պատմութեան նշանաւոր ուսումնասիրողը, այս իշխանութիւններու վաղանցուկ կեանքը կը պատկերացնէ հետեւեալ տողերուն մէջ։

«Հին Հայկական Հարստութեանց ներկայացուցիչները մեծ մասամբ բռնութեամբ անհետացած ըլլալով, երկրորդական զանազան պետեր յաջողեցան իրենց ազդեցութիւնը աճեցնել, դեռ անուանապէս հպատակելով Յոյն կայսրերու որոնք կը ջանային պահել երեւութապէս վեհապետութիւնը՝ անոնց բաշխելով Բիւզանդական նուիրապետութեան տիտղոսները: Անոնցմէ մեծ մասը օգտուեցաւ մասնաւոր կացութենէն որ ստեղծուած էր ազգային հին հարստութեանց անհետացումով եւ դժուարութիւններէն՝ որոնք կը շրջապատէին կայսրութիւնը, անկախ դառնալու եւ ընդարձակելու իրենց ստացուածքները Յոյներէն ինչպէս նաեւ իսլամներէն:

Առաջին Խաչակիրները առաջ բերին համապատասխան փոփոխութիւն մը այսպէս հիմնուած իշխանապետութեանց վիճակի մէջ: Նախ Հայ իշխանները փորձեցին օգուտ քաղել խռովութեան շրջաններէն որ երկիրը կը յուզէր, ընդարձակելու համար իրենց ստացուածքները: Միեւնոյն ատեն, կարեւոր ընտանիքներու վերաբերող պետերու կողքին, կ'աճէին տեղական պետեր որոնք կ'օգտուէին պարագաներէն անկախ դառնալու համար: Այսպէս շարունակուեցաւ մինչեւ այն ատեն ուր աւելի հաստատուն իրերու կարգ մը հաստատուեցաւ Խաչակիրներէն: Ասոնք եկան շատ արագ կարգաւորել պզտիկ Հայ հարստութիւնները եւ յաճախ նոյնիսկ զանոնք ջնջել: Միայն ընտանիք մը բաւական զօրաւոր եղաւ դիմակալելու համար կամ ունեցաւ բաւական քաղաքական հասողութիւն համաձայնութեան գալու Լատիններու հետ: Ասիկա էր Ռուբինեան ընտանիքը» (F. Chalandon, Jean II. Comnène և Manuel I. Comnène, 103–104)։

Արդարև Ռուբէն, զոր Անդիտաւրոսի բարձունքներուն վրայ կանգնեցուցած էր Փիլարտոս, ամէնէն բարեբախտը եղաւ, որովհետև իր անկախութիւնը պահպանելով հանդերձ՝ յաջողեցաւ տարագիր հայութեան բեկորներէն տեւական իշխանութիւն մը ստեղծել բուն Կիլիկիոյ մէջ, որ վերջապէս թագաւորութեան աստիճանին ալ բարձրացաւ։

Ռուբէն որ շուրջ 1080ին հաստատուած էր 'ի Կորոզմոլ, Բարձրաբերդ, Կոպիտառի երկրին մէջ, Տաւրոսեան լեռնաշղթային մէջ, Զէյթունի մօտ, կը թողու տղայ մը Կոստանդին անուն, որ կը տարածէ իր իշխանութիւնը Թուրքերէն գրաւելով երկրամասեր, ինչպէս Տաւրոսի մեծ մասը և Յոյներէն՝ Վահկան։

Կոստանդին բռնած էր Տաւրոսի անցքերը և մասնաւորապէս տէրն էր Անարզաբա–Կեսարիա ճամբուն։

Խաչակիրները ստիպուած էին բանակցիլ անոր հետ։ Կոստանդինի և Լատիններու յարաբերութիւնները լաւ էին։

Հայ պետը Արեւմտեաններուն կու տայ ազատ անցք և անոնց կը հայթայթէ պաշար Անտիոքի պաշարման ատեն։

Լատինները իրեն կու տան Պարոն տիտղոսը ի փոխարէն իր ծա-

տուցած ծառայութեանց (Հմմտ. F. Ghalandon, Jean II Comnène, A. Manuel I Comnène, 107):

Իր յաջորդները բոլորովին ամրապնդուեցան և ի վերջոյ իրենց միացնելով Տարսոնի և շրջակայ գաւառներու մէջ հաստատուած Օշինեանց իշխանութիւնը, հիմնեցին պետութիւն մը, որ երեքհարիւր տարիներու կեանք մը ունեցաւ (1080-1375):

## Ե.

## ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԽՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԱԴՈՎԿԵԱՆ ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՄԷՋ

ԺԱ. դարուն կէսերը, Կապադովկիա, Պամփիւլիա, Կիլիկիա, Հիւսիսային Ասորիք, Միջագետք, ամբողջ Հայերով լեցուն, որորանները եղան, ուրեմն մեծ ու փոքր Հայ իշխանութիւններու, աւատապետութիւններու, բերդապահութեանց և սահմանապահութեանց աւելի կամ նուազ հաստատուն և քիչ ու շատ կախում ունեցող Բիւզանդական կայսրութենէն, և որոնց սակայն ամէնքը փճացան բացի մէկէն որ կրցաւ տեւական ըլլալ: Անոնք կը ներկայացնէին ամրութեան շղթայ մը Արեւելեան Հռոմէական կայսրութեան համար և պահապաններ՝ Արեւմտեան քաղաքակրթութեան ընդդէմ բարբարոսութեան որ Արեւելքէն իր սպառնալից ժանիքները ցոյց կու տար: Սակայն իրենց գերազանցապէս օգտակար դերը չըմբռնուեցաւ դժբախտաբար Բիւզանդական կայսրութեան վարիչներուն կողմէն որոնք փոխանակ զանոնք կազմակերպելու և ամրացնելու, կազմալուծել, քայքայել և տկարացնել աշխատեցան կարճմտօրէն:

Նիկեփոր, Զմշկիկ, Վասիլ, Տաւրոսի լեռնաշղթան ամրացնելու և անանցանելի ընելու համար ո՛չ միայն Հայ զինուորական գաղութներ հոն տեղաւորած էին, այլ անոնց առանձնաշնորհումներ տալով իրենց դժնդակ պարտականութեանը լծուած պահելու համար ամէն ջանք թափած էին:

Անոնց տխմար յաջորդները, շարունակեցին Հայաստանը պարպել, առանց սակայն որոշ ծրագիրի և առանց առաւելագոյն օգուտի մը հետապնդութեան:

«Այն ատեն երբ Հոռոմները Արաբներու ձեռքէն քաղաքներ առին Կապադովկիոյ, Հայաստանի (իմա Կիլիկիոյ) եւ Ասորիքի մէջ, Մեծ Հայքէն քաշեցին բերին շատ մը ժողովուրդ, որոնցմէ ոմանք հաստատուեցան այս կողմերը եւ բազմացան, ոմանք գացին Կ. Պոլիսէն անդին, ոմանք Եգիպտոս գացին» (Michel le Syrien, Գ. 198):

Ասորի պատրիարքին այս վկայութիւնը ցոյց կու տայ թէ որքան որ Կապադովկիա, Կիլիկիա և Ասորիք կը լեցուէին Մեծ Հայքէն եկող նոր Հայ գաղթականներով, սակայն որոշ ձգտում մը չի կար կեդրոնանալու և մինչև Կ. Պոլիս և Եգիպտոս անոնք կը ցրուէին և կ'երթային կորսուիլ օտար զանգուածներու մէջ,

Ասով հանդերձ իրենց գլխաւոր կեդրոնացման վայրերն էին ան-



չուշտ Եփրատի արեւմտեան կողմի երկիրները՝ մասնաւորապէս Լիկանդոս, Ծամնդաւ, Լարիսա և Symposion, արդէն Մլեհէն Հայ գաղթականներով լեցուած վայրերը, ուր եկան հաստատուիլ ԺԱ. դարուն յաջորդաբար Վասպուրականի՝ Սենեքերիմ, և Անիի ու Կարսի երկու Գագիկ թագաւորները:

Հայ թագաւորներու Կապադովկիոյ մէջ հաստատուելէն յետոյ Սեբաստիայէն և Կեսարիայէն դէպի աւելի արեւմուտք Հայերու խմբական գաղթականութիւնը կը դադրէր (Laurent, «Byz. et les Turcs, 69):

Այդ տեղերուն մէջ այլեւս Հայերը կը գտնենք միայն պահակազօրքի ձեւին տակ (Laurent, նոյն, ինչպէս նաև Կոստանդին Ծիրանածին, Գիրք Արարողութեանց, Բ. գլ. 44, 45, A. Ramband, L'Empire Grec au Dixième Siècle, Constantin Porphyragénète, Paris, 1870, էջ 251):

Նոյնիսկ Կեսարիոյ շրջակայքը աւելի Յոյն էր քան հայկական, մանաւանդ անոր հարաւ արեւմուտքը Սողանլը-Տէրէ և Գէօրէմէ, գտնուած եկեղեցիներու արձանագրութիւնները — որոնք 1061 թուականէն և անկէ յետոյ են(1) — և անձերու անունները կը հաստատեն թէ երկիրը յոյն է: Ճամբորդներ հոն չեն յիշեր Հայ անուններ (Laurent, նոյն 69. H. Grégoire, Rapport sur un voyage d'exploration dans le Pont et en Cappadoce. Bulletin de Correspondance Hellénique. 1909, էջ 95 և յաջորդք. De Yesphaniou. Revue Archéologique. 1908, Բ. 1 և յաջորդք):

Սակայն Կեսարիայէն դէպի Արեւելք և մանաւանդ դէպի հարաւ տարածուած երկիրներուն մէջ Հայոց թիւը մեծ էր:

Մասնաւորապէս հարաւային Տաւրոսի և Կիլիկիոյ մէջ, Հայերը հաստատուած էին Նիկեփոր Փոկասի օրերէն սկսեալ (Ապուլֆարաճ, Սուրիական ժամանակագրութիւն, 1789, Լայպցիգ, 200), և տարածուած էին արեւմուտքէն մինչեւ Սելէֆքէ, Անտալիա, և Արեւելքէն Ասորիք, Անտիոք, Կեսարիա (Որոնդէսի վրայ), Տլուք, Եդեսիա (J. Laurent, Byz. et les Turcs. 69-70):

Ատտալիատէս (97) կը հաստատէ շատ իրաւամբ թէ 1060ին, «հերետիկոս Հայերը կը լեցնէին Իբերիան (=Վրաստան), Միջագետքը մինչեւ Լիկանդոս, Մելետինէն եւ դրացի երկիրները» որոնց մէջ էր նաեւ Կեսարիան՝ իր շրջականներով:

Առանց ասոր անմեկնելի պիտի մնար մէկ բացատրութիւնը նոյն Ատտալիատէսի (120), որ խօսելով Ռոմանոս Տիոժէնի 1069ին Սուրիայէն դարձին վրայ, կ'ըսէ թէ երբ անցաւ Տարսոնէն, յետոյ Պոտանտոսէն(2) «մտաւ Հռոմայեցւոց երկիրը», τη Ρωμαίων: Ըսել կ'ուզէր թէ Ռոմանոս Տիոժէն դուրս կ'ելլէր օտար երկրէ մը որ էր Հայերուն երկիրը:

Ուրեմն մինչեւ Բիւզանդի, երկիրը կը նկատուէր Հայկական:

Նոյնը կը հաստատեն նաեւ խաչակիր ժամանակագիրները որոնք Կեսարիոյ մօտաւոր շրջանակներ իբր «Հայկական երկիրներ» կը ճանչնային (տես Բրիտանական համայնագիտարան): Այսպէս խաչակիր-

(1) Նոյնիսկ 1293ի արձանագրութիւնները և յատուկ անունները այդ շրջանին մէջ յունական են և ոչ հայկական (Laurent, նոյն. 69):

(2) Podantos=Պոտանտոս կամ Պոտանտօն ինչպէս վերը բացատրըուած է Մեծն Աղեքսանդրի օրերէն յայտնի վայր մըն էր և Կապադովկիոյ սահմանագլուխին վրայ կը գտնուէր և արդի Բիւզանդիին կը համապատասխանէր (տես վերը, 428, 432-3):

ները, որ քիչ յետոյ եկան, կը մտնէին Հայկական երկիր, երբ որ կը հեռանային Կապադովկիոյ Հերակլիայէն(1) (Tudebode (Rev. occ. III) IV. 2. 30. 4. 32. Etienne de Blois «Lettre.» 2. HEp. 150. Laurent. «Byz. et les Turcs», 71)։

Ուրեմն Բիզանդիէն և Էրէկլիէն արեւելք գտնուող երկիրները կը համարուէին Հայ երկիրներ, իրենց հայաբնակ դարձած ըլլալուն համար մանաւանդ Սենեքերիմի և Գագիկի Հայ թագաւորներուն փոխադրութենէն յետոյ, ինչպէս կը հաստատէր Միխայէլ Ասորի (Գ. 133), ըսելով թէ Հայերը «տարածուեցան բոլոր Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ Սուրիոյ մէջ»:

Մասնաւորապէս Հայ գաղութները Արգէոսի ստորոտը և մանաւանդ Անտիտաւրոսի երկու կողմերը, թուական աճում մը ունեցան 1071էն յետոյ։

1071ին Մանազկերտի աղէտով երբ ա՛լ Հայք անկարելի կը գտնէին բնակիլ բուն Հայաստան, անոնք զանգուածօրէն գաղթեցին եւ եկան հաստատուեցան Փոքր Ասիոյ հարաւ-արեւելեան խորշերուն մէջ: Հայոց այս արտագաղթը բնական եւ անխուսափելի էր իսկ Փիլարտոսի գլխաւոր ծառայութիւնը սա՛ կէտին մէջ կը կայանայ որ, աշխարհագրական-քաղաքական հանգամանքներու մասին իր ունեցած տեսութեան եւ կատարած իմաստուն ընտրութեան շնորհիւ, արտագաղթը փոխանակ աննպատակ և ցիրուցան կերպով պատահելու, հաստատուն ուղղութեամբ մը տեղի ունեցաւ և Հայութեան մնացորդը սահմանափակ որոշ շրջանակի մը մէջ, խտացաւ եւ կեդրոնացաւ, ամենահոծ զանգուած մը զետեղուելով Իսոսի ծոցին բոլորտիքը, որ անկէ վերջ՝ բնական բերումով՝ *Հայոց ծոց* յորջորջումը ստացաւ: Այսպէս, Ամանոսի եւ արեւելեան Տաւրոսի երկու զառիթափները հոծ Հայութեամբ մը լեցուեցան, Հայ վանքեր՝ մեղուներու փեթակներու չափ բազմաթիւ՝ նոյնքան ալ ժրաջան ու կենսալիր եռանդով կը շէնցնէին Քեսունի, Բերդուսի, Ուռհայի, Գերմանիկիոյ եւ Տլուքի շրջանները, զորս մեր պատմութիւնը ընդհանուր կոչումով «Սեւ Լերինք» կ'անուանէ եւ որ կը տարածուի Եփրատէն մինչեւ Ջահան գետ: Կարմիր վանք, Շուղր, Ընկուզուտ, Արեգին, Յեսունեանց անապատ եւ ուրիշ մենաստաններ, Գրիգոր Վկայասէրի ջանքերով ու Փիլարտոսի պաշտպանութեամբ կարճ միջոցի մը մէջ կրթական գործունէութեան մեծ կեդրոններ դարձան, որ մօտաւոր ապագայի մը մէջ Հայ գրականութեան համար եթէ ոչ նոր ոսկեդար մը, գոնէ *արծաթի դար* մը կը խոստանար: Ասորւոց գրականութեան յիշատակարաններէն կ'իմանանք որ՝ այդ օրերուն Մալաթիայի, Հասնմանսուրի եւ Ուռհայի շրջանները ալ լի էին Ասորի ծաղկեալ դպրեվանքներով ու մենաստաններով: Ասորւոց պատրիարքութեան աթոռանիստ վայրը՝ այն ատեն Մալաթիայէն քիչ մը հարաւ՝ Բար-Սաւմա (Bar-Sauma) վանքն էր (տես W. Wright. «article Syriac Literature, Enc. Brit. 9th Edition», Vol. XXII 848) (Կոմմագենացի, նոյն, 61-62)։

Այս կերպով անիկա հանդիսացաւ Կիլիկեան Հայ թագաւորութեան իսկական հիմնադիրը, ինչպէս իրաւամբ գրել կուտայ Կոմմագենացի (Հմմտ. Փիլարտոս Հայր):

Թող ներուի միայն ինծի գրել տալ թէ յարգելի բանասէրը՝ որ այնքան խորապէս ուսումնասիրած է ժամանակը ուր ապրած է իր

(1) Héraclée de Cappadoce, նոյնն է այսօրուան Էրէկլին, մերձակայ Բիզանդիի։



հերոսը Փիլարտոս Հայը, այնքան խանդավառուած է այդ ուշագրաւ և իսկապէս անիրաւուած մեծ մարդու գործունէութեամբ որ կարծես թէ միակողմանի եղած է տեղ տեղ և սահմանափակումներու ենթարկած է իր հայեացքը և նեղ հորիզոն մը ընդգրկած։

Հմուտ հետազօտողը, պէտք էր ըսեր միեւնոյն ատեն թէ Մանազկերտի պարտութենէն յետոյ, Հայաստանէն մեկնող զանգուածներէն կարեւոր մէկ մասն ալ Եփրատէն անցնելով հաստատուած է Հայ ճորտ թագաւորութեանց սահմանները, Սեբաստիա, Կեսարիա եւայլն ուր տեղերը եւս Հայերը լծուած են շինարար աշխատանքի, հոն տեղերը եւս հիմնած են վանքեր, եւայլն։

Տարբերութիւնը միայն հոն է որ Կապադովկիա շուտով կ'ենթարկուի Թուրք լուծի, մինչ Փիլարտոսի սեփական երկիրներուն մէջ հաստատուած Հայերուն մէկ կարեւոր մասը բարեյաջող պարագաներու բերմամբ կրնայ Հայ անկախ իշխանութիւններու ենթարկուած մնալ աւելի երկար ատեն։

Այնպէս որ ԺԲ. դարուն, Ներսէս Լամբրոնացի ընդհանուր կերպով շատ մօտ է ճշմարտութեան երբ կը գրէ (Rec. Arm. Ա. 576) «այն դարուն ուր Ֆրանկները հասան, բոլոր Միջագետք, Սուրիա, Ասորիք, Կիլիկիա, Պամփիլիա, Կապադովկիա եւ բոլոր Գամրաց երկիրը բնակուած էր Հայերով»:

Ս. Ներսէս Լամբրոնացի կ'աւելցնէր թէ այս բոլոր Հայերը ունէին «պետեր իրենց գլուխը», ինչ որ կատարելապէս ճիշդ էր։

Այն իրողութիւնը թէ բոլոր այս շրջանակները, ընդ որս նաև Կապադովկիա, լեցուած էին Հայերով, բացարձակ է և անժխտելի։

Եւ այս առաւելապէս կը պարտինք Հայ ստուեր թագաւորութիւններուն, որոնք Ծամնդաւ և Պիզու կեդրոնով կազմուեցան հարաւային Կապադովկիոյ մէջ և 40-50 տարիներու, թէպէտև ազազուն ու տկար, կեանք մը ունեցան, Հայաստանէն դուրս, առաջին անգամ Հայ իշխանութեան մը հիմը դնելով Տաւրոսի հիւսիսակողմը, և կերպով մը առաջին նմոյշն ու օրինակը, և նախագաղափարը հանդիսանալով յետոյ Տաւրոսի հարաւակողմը հաստատուած Կիլիկիոյ Հայ թագաւորութեան, որ ազգային պատմութեան մէջ այնքան նշանաւոր դեր մը պիտի կատարէր։

Թ.

# ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
# ԴԱՆԻՇՄԱՆԴԵԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**(1080 — 1169)**

Ալփասլան՝ Դանիշմանդի տուած էր Երզնկայէն մինչև Ալիս տարածուող երկիրները առանց զանոնք իրապէս գրաւած ըլլալու (1071)։ Դանիշմանդ 1071ին գրաւելով Նիկսար քաղաքը և զայն իր առաջին կայանը ընելով գործնականապէս իր պետութեան հիմը դրած էր։ Այս պատճառով պատմիչներէն ոմանք այս թուականը կը համարեն Դա-

նիշմանդի իշխանութեան սկիզբը, մինչ ուրիշներ— ինչպէս Միքայէլ Ասորի— 1055 թուականը։

Դանիշմանդեան ընտանիքին նախահայրը՝ Ահմէտ Տայլու ծագումով Հայ կամ Թուրքման և ոչ ազնուական այլ վարժապետ (danismand) հմուտ արաբերէնի և պարսկերէնի ըստ Կոմմագենացիին (տես Փիլարտոս Հայր, 22), 1058 թուականին Աբբասեան ամիրապետէն թոյլտուութիւն ստացած էր Րումի երկիրներու մէջ, այսինքն Անատոլուի կողմերը «սրբազան պատերազմ» մղելու և իր նուաճած նահանգներուն իշխանութիւնը իրեն սեփականելու։

Այս կերպով կրնար իր իշխանութիւնը հիմնուած համարուիլ առանց իրապէս հող ունենալու։ Կ'երեւի թէ մասնակցած էր Մալաթիոյ պաշարման, գրաւման և կործանման։ Յետոյ գործօն դեր ունեցած էր հաւանօրէն Սելճուկեանց դէպի Փոքր Ասիա կատարած արշաւանքներուն մէջ և ծանօթացած՝ երկրին վիճակին և ճամբաներուն։ Կը կարծուի թէ Ալփասլանի մեծապէս օգտակար եղած է իր ունեցած ծանօթութիւններով և տուած խորհուրդներով, անոր համար է որ Ալփասլան դարձեալ իրեն — որ իր Հէճպն (= սենեկապետ) էր— շնորհած է Աբբասեան ամիրապետներու տուած իրաւունքը՝ որ այս անգամ արժեցուցած է։

Բրիտ. Համայնագիտարանը կը հաստատէ Տայլուի կամ Թէյլուի այս հարստութեան հիմնադիրը ըլլալը, իսկ Herbert M· Y. Loewe, այս հարստութեան հիմնադիրը կը համարէ Մուհամմէտ իպն Կիւմիւշթէկինը, նոյնպէս ուսուցիչ (տես The Cambridge Medieval History, Դ. հտ. 315)։ Արդ յիշուած ըլլալով որ Տայլու որդին էր Կիւմիշթէկինի որ կը կոչուէր նաև Մուհամմէտ Պէն-էլ Դանիշման, երկուքը կը նոյնանան։ Սակայն շփոթութիւնը կը շարունակուի պատմական դէպքերու շարայարութեան մէջ ուր դարձեալ անունները իրար կը խառնուին և մէկուն արարքը միւսին կը վերագրուի(1)։

Ամէն պարագայի մէջ Նիկսարի գրաւումը (1071) կրնայ իրական սկիզբը համարուիլ այս իշխանութեան, որ հետզհետէ Ամասիա, Թոգատ, Մարզուան և Զորում քաղաքները գրաւելով տարածուեցաւ մինչև Ալիս, ինչպէս իրեն հրամանագրուած էր Ալփասլանի կողմէ։ Հայ պատմագիրներէն Մատթէոս Ուռհայեցիի սա խօսքերը թէ Դանիշմանդ էր «տէր Սեւաստու եւ ամենայն Հոռոմոց աշխարհին» (333) կերպով մը կը սահմանէ անոր գրաւած շրջանակները։ Վարդան միայն «տէրն Սեբաստիոյ» (112) կը կոչէ զայն։ Միքայէլ Ասորի սակայն աւելի որոշ կերպով կը հաստատէ թէ Կապադովկիա՝ իր Կեսարիա մայրաքաղաքով անոր իշխանութեան ենթարկուած էր։ Անիկա կ'ըսէ թէ «ի սոյն ժամանակս (Ալփասլանի ատեն և Սիւլէյմանի Անտիոքն առած օրերուն) ամիրայ մի անուանն Դանշման, ելեալ ի Թուրքաց եւ եկն եմուտ յերկիրն Կապադովկացւոց եւ ա՛ռ զՍեւաստ եւ զԿեսարիա եւ իշխանացաւ ի վերայ երկրին:

(1) Դանիշմանդեան հարստութեան պատմութիւնը տակաւին խիստ մութ է հակառակ Մորթմանի, Շուլումպէրժէի, Քարապաճէքի, Սալլէի և ուրիշներու ջանքերուն։ Հայ պատմագիրները՝ շատ տեղեկութիւններ տուած են անոնց մասին, սակայն միշտ հատուկոտոր և դժուար է ամբողջական ու լիակատար պատմութիւն մը ունենալ։



Եւ այս է սկիզբն տան Դանշմանայ(1)» (տես Միքայէլ Ասորի, 398. հմմտ. Մատթ. Ուռհայեցի Բ. ՃԿԷ. Ծանօթ. 200)։ Այնպէս որ Կեսարիոյ գրաւումը և մինչև Ալիս Դանիշմանդի իշխանութեան տարածումը արդէն իրագործուած կրնայ համարուիլ այն ընդհանուր գրոհին ատեն որ Թուրքերը կատարեցին 1080ին։

Դանիշմանդ աւելի վերջը Ալիս գետն անցաւ և գրաւեց Քանղըրը (= Զանկըրը) և Դասթէմունի քաղաքները։ Վերջապէս 1084ին Ճանիկի (Սամսոն) կողմերը բերդ մը պաշարած ատեն սպանուեցաւ(2) (հմմտ. Կոմմագենացի, նոյն, 23 և Գամուս Իւլ Ալամ Գ. 2103 ա)։

Սիւլէյման իբն Գութուլմիշ այս թուականին Հայաստանէն Փոքր Ասիա փոխադրուած էր և հզօր իշխանութեան մը տէր դարձած։ Սիւլէյման և իր չորս եղբայրները Հայաստանի փոխարքայութիւնը ձեռք բերելէ յետոյ, զէնքով հզօր և փառասէր, վրէժխնդրական ոգիով ալ լեցուած, ապերախտօրէն սուր կը քաշեն Ալփասլանի որդւոյն՝ Մելիքշահի դէմ (1074ին)։ Երբ երկու ոխերիմ բանակները նշանի կ'սպասէին զիրար փողոտելու համար, Պաղտատի Աբբասեան խալիֆան կը փութայ միջամտել և կը յորդորէ որ փոխանակ եղբայրասպան կռիւով զիրար փճացնելու, իրենց միացած ոյժերը անհաւատ Յոյներուն դէմ գործածեն։

Երկու կողմերն ալ կ'անսան այս պատգամին։ Մելիքշահ կ'ողջագուրէ իր ըմբոստ ազգականները և Սիւլէյմանի կը յանձնէ արքայական դրօշակը՝ ազատ համարձակ աշխարհակալութիւններ ընելու և ժառանգական իշխանութիւն մը հիմնելու Ալիսէն մինչև Կ. Պոլիս և անկէ ալ բոլոր ծանօթ և անծանօթ երկիրներու վրայ (Gibbon VI. էջ 258)։

Այս կերպով 1074ին Միւլէյման տակաւին այն ատեն «Ամիրա» Արեւմուտքի ընդհանուր հրամանատար կը կարգուէր, Փոքր Ասիոյ մէջ ժառանգական թագաւորութիւն մը հիմնելու իրաւասութեամբ (Finlay, «Byzantine Empire», 521, n. 1 Nicephor· Bryenn, 25— Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, 42 և 33)։

(1) Միքայէլ Ասորի ուրիշ տեղ մը ըսած է. «Ամիրայ մի պարկեշտաձեւ եւ աղօթարար եւ քաղցրաբարոյ եկն զօրօք 'ի Կապադովկիա եւ հրամանաւ Ալփ Ասլանայ էառ զՍեւաստ եւ զԿեսարիա, տիրեաց եւ մեծացաւ, եւ այս եղեւ սկիզբն Դանշմնայ, զի այս է անուն նորա, քանզի յորժամ ածան առքա զառաջին 'ի Թեսալացւոց գերութեամբ ուսան զօրէնս Տաճկաց եւ եղեւ այս Դանշման յոյժ նախանձաւոր այնմ ... դէնի»:

(2) Կոմմագենացիի այս կանոնաւոր թուագրումին աղբիւրը անծանօթ կը մնայ։ Դանիշմանդեանց վրայ խօսող բոլոր հեղինակները համաձայն են որ Սիւլէյման իբն Գութուլմիշի մահէն (1086) գրեթէ անմիջապէս վերջը, Սեբաստիա, Թոգատ, Նիկսար, Էլպիստան, Մալաթիա կը գտնուէին Դանիշմանդի իշխանութեան տակ (Բրիտ. Համայն.)։ Herbert M. Y. Loewe (տես The Cambridge Med. His. Դ. հտ. 315) ասոնց վրայ կ'աւելցնէ նաև Կեսարիան, անմիջապէս յարելով թէ «այս քաղաքներէն մէկուն կամ աւելիին մէջ կրնան հաստատուած ըլլալ շատ աւելի կանուխ, թերեւս 1071ին Ռոմանոս Տիոժէնի մահէն վերջ կամ 1084ին, ինչպէս կը կարծեն ոմանք»:

*Ուրեմն ինչպէս Դանիշմանդի Երզնկայէն Ալիս տարածուող երկիրը շնորհուած էր նախ քան երկրին գրաւումը, նոյնպէս Սիւլէյմանի կը շնորհուէր դարձեալ նախ քան գրաւումը, Ալիսէն մինչև Վոսփոր տարածուող երկիրները։*

«Մելիքշահին կողմէ Սիւլէյմանին այս պաշտօնը յանձնուիլը իմաստուն քաղաքականութեան մը արդիւնքն էր: Որովհետեւ Դանիշմանդեան իշխանութեան հաստատումովը եւ Կովկասի Սելջուկ գերիշխանութեան անցնելովը, Թուրքմաններ իրենց հին դուները փակուած կը գտնէին, որովհետեւ անոնք ցայվայր արեւելեան Անատոլուն ու Կովկասը ասպատակելով կ'ապրէին, հետեւաբար անոնց համար ապրուստի նոր աղբիւրներ գտնել պէտք էր, քանի որ իրենք բնիկ ժողովուրդին պէս մշակութեամբ զբաղելու անընդունակ էին, ուստի արեւմտեան Անատոլուի մէջ գաւառներ կարող էին իրենց պէտքերը հոգալ եւ ցանկութիւնները յագեցնել» (ԹԱՐԻԽԻ ՕՍՄԱՆԻ ԷՆՃԻՒՄԵՆԻ Ա. 171-2):

*Ուստի Սիւլէյման իր շուրջը հաւաքեց մեծ թուով Թուրքմաններ, որոնք իր բանակին պիտի հետեւէին, որպէսզի նուաճուած վայրերը բնակութիւն հաստատէին։ Աւանդութիւնը Սիւլէյմանի բանակին ընկերացող Թուրքմաններու թիւը աւելի քան* 100.000 *կը նշանակէ։*

*Մելիքշահ հրամայեց Դանիշմանդի որ Սիւլէյման իբն Գութուլմիշը և իր Թուրքմանները իր հողէն անցընէ և օգնէ անոնց որ Ալիս գետին արեւմտեան կողմը հաստատուին։*

*Մելիքշահի այս հրամանը գործադրուեցաւ և Սելջուկեանք դիւրաւ թափանցեցին մինչև Կապադովկիոյ կեդրոնը և հոն նախ Կեսարիան գրաւեցին, բայց յետոյ զայն ձգելով՝ աւելի արեւմուտք քալեցին* (*Կոմմագենացի*, Փիլարտոս Հայը, 42-43)։

*Ռոմանոսի գերութենէն յետոյ Բիւզանդական բանակին գլուխը անցնող Իսահակ Կոմնենի Կեսարիոյ մօտ կրած մեծ պարտութենէն վերջ* (*Գելցեր*, 310), *Միքայէլ Պարապինակէս կայսրը* (1071-1078) *իբր կատարուած իրողութիւն, համակերպեցաւ Փոքր Ասիան Սելջուկեանց յանձնելու։ Սիւլէյման և իր Թուրքմանները հոն հաստատուեցան։*

*Այս նոր բնակիչներուն, որոնք Սիւլէյմանի բանակին կը հետեւէին, արդէն անմիտ Բիւզանդացիք տեղ բացեր էին, վասնզի ինչպէս Միքայէլ Ասորի կը հաստատէ* (396) *Կոստանդին Ժ. Մոնոմախոս կայսրը* 1050*ին* «յորժամ ետես թէ զօրանայ Թուրքն, եհան զքրիստոնեայսն որ յայսմ կողմէ ծովուն եւ անցոյց յայնկոյս, եւ եկեալ Թուրքն՝ եգիտ զերկիրն անմարդ եւ բնակեցան ի տեղին»:

*Թուրքերը այսպէս անգամ մը հաստատուած Փոքր Ասիա, շարունակեցին միշտ ասպատակել Բիւզանդական երկիրներ և նեղել՝ կողոպուտներով և աւարառութիւններով* (*Գելցեր*, 312)։

*Վճռուած էր Բիւզանդական կայսրութեան ճակատագիրը երբ Ալեքս Կոմնեն* (1081-1118) *գահ բարձրանալով իբր ընդունակ զօրավար մը, կրցաւ պահ մը ոգեւորել ապականուած Բիւզանդիոնը և երկարաձգել անոր հոգեվարքը որ սկսած կրնար համարուիլ արդէն, սակայն անդարձ կորսուեցաւ Արեւելեան Փոքր Ասիան, ընդ որս նաև Կապադովկիան, որ այս դժնդակ պարագաներու տակ մի անգամ ընդ միշտ ենթարկուեցաւ իսլամ տիրապետութեան։*

*Սելջուկեանք ստիպեցին շատերը ընդգրկել մահմետական կրօնքը* (Zimmerer, *ՀԱ.* 1900) *և հոն ամրապնդուեցան վերջնապէս։*

*Դանիշմանդի իշխանութիւնը՝ որ տէր դարձաւ Կեսարիոյ և շրջա-*



*կայից խիստ եղերական դեր մը կատարեց Փոքր Ասիոյ պատմութեան մէջ, վասնզի անիկա իբր դուռ ծառայեց Սելջուկներու ներխուժումին դէպի Փոքր Ասիա և հոն ոտքի կռուան գտնելուն։ Ան էր որ վերջ տուաւ քրիստոնեայ տիրապետութեան վերջին ստուերներուն Կապադովկիոյ մէջ և հոն հիմնեց պետութիւն մը որ ո՛չ միայն աւելի հին էր քան Ռումի Սուլթանութիւնը, այլ թէ՛ առաջ և թէ՛ վերջն ալ երկար ատեն անկէ շատ զօրաւոր ու կարեւոր եղած էր։*

*Բրոֆ. Հուցմա կ'ըսէ թէ* «Սելջուկեան պետութիւնը փոքր եւ աննշան էր եւ չհասաւ կարեւորութեան մինչեւ որ Գըլըճ Արսլան Բ. (1175ին) նուաճեց Դանիշմանդներն ու իւրացուց անոնց կալուածները (Prof. M. T. Houtzma, Բրիտանական Համայնագիտարան — *Կոմմագենացի*, Փիլարտոս Հայը, 52):

*Կոմմագենացի* (52) *իրաւամբ կ'ըսէ թէ* «թրքական աղբիւրներու բացորոշ խոստովանութեան վրայ հիմնուած, կը համարձակինք մինչեւ իսկ յայտարարելու որ եթէ Դանիշմանդեան իշխանութիւնը կանխապէս կազմուած չըլլար եւ ժամանակ մը ձեռնտու եւ պաշտպան չկանգնէր Ռումի Սուլթանութեան, վերջինս երբեք պիտի չկարենար ո՛չ գոյութիւն առնել եւ ո՛չ ալ պահպանել իր գոյութիւնը»:

*Արդարև, ո՛չ միայն Ահմէտ Տայլու անցք տուած էր Սիւլէյման իբն Գութուլմիշի և անոր Թուրքմաններուն, այլ անոր Դամասկոսի Դդուշ Սուլթանին դէմ պատերազմած միջոցին սպանուելէն* (1086) *և իր երկիրն քայքայուելէն յետոյ օգնած էր անոր որդիին՝ Գըլըճ Ասլանի* (1092-1107) *որ իր հօրը պետութիւնը վերահաստատէ։*

*Դանիշմանդեան տունը որ այնքան զօրաւոր էր կրնար ինքն իւրացնել Սիւլէյմանի երկիրները, սակայն չըրաւ, այլ ընդհակառակը նպաստեց անոր վերահաստատութեան, այնպէս որ Փոքր Ասիոյ մէջ կազմուեցան իրարու դրացի երկու իսլամ պետութիւններ։*

*Դանիշմանդի պետութիւնը հետզհետէ ընդարձակուեցաւ և Փոքր Ասիոյ սիրտին վրայ կարեւոր դիրք մը գրաւեց շնորհիւ տեղացի քրիստոնեաներու համակրութեան։*

*Բոլորովին անհիմն և անարժէք չէ անշուշտ այն վկայութիւնը որ Մատթէոս Ուռհայեցի* (368) *վճռաբար և Վարդան պատմիչ* (112) *վարանումով, այսինքն* «աստն»*ով մը կու տան Տայլուին որդիի համար, ըսելով թէ անիկա* «յազգէն Հայոց» *էր։*

*Թրքական աղբիւրներ զայն Թուրքման կը ներկայացնեն։ Շէմսէտտին Սամիի նշանաւոր յատուկ անուանց բառարանը* (Գամուս Իւլ Ալամ, *Գ, հտ.* 2103 *ա*) *կ'ըսէ թէ* «Ղազի Ահմէտ պին Ալի պին Նասր՝ Թուրքման իշխան մըն էր եւ Դանիշմանդեան պետութեան հիմնադիրը: Անիկա գիտուն, հմուտ, եւ լաւ մեկնիչ էր»:

*Սակայն ես Կոմմանագենացիի հետ* (*տես* Փիլարտոս Հայը, *յաւելուած Է-Ը*) *տրամադիր եմ աւելի զայն նկատելու կրօնափոխ Հայ մը կամ Վրացի մը։ Անիկա հիմնուելով Տոմաշէկի* (*տես* Սասուն, 41) *մէկ վկայութեան վրայ հակամէտ է զայն Վրացի մը ենթադրելու։*

*Ահա Տոմաշէկի տողերը որոնք այս ենթադրութեան տեղի տուած է.* «Հաշտենից ու Արշամունեաց մէջ կ'իշխէր այն ատեն Իսահակ Կոմնենոսի դըրած անձը՝ Խանէ Վրացին(1), որ 1048ին Բասենոյ դաշտը Կապուտռու ամրոցին

---

(1) *Զարմանալի է որ Տոմաշէկ իւվանէ անունը այլափոխած է Խանէի։ Նոյնպէս զարմանալի է որ Կոմմագենացին որ այնքան խորա-*

քով Սելջուկեաններէ գերեալ Լիպարիտ Կիւրապաղատին որդին էր: Խանէ վստահելի անձ չըլլալով՝ քիչ ժամանակ առաջ թօթափած էր վրայէն ճորտութեան լուծը եւ միաբանած էր հիմա (1054) Տաճկաց հետ, որոնց աւարառու խումբերուն գլուխը անցած՝ Օխթիս եւ Ճանեթ առաջնորդեց: Խանէի որդիներէն՝ մին՝ Աբու-Դինարի զօրաց առաջնորդն ըլլալով՝ Մելիտինիոյ վրայ քալեց»:

*Կոմմագենացի կը հարցնէ թէ* «արդեօք Խանէի (*կարդա՛ Իւանէի*) այս անանուն որդին՝ նոյնինքն Դանիշմանդը չէ՞ր. որովհետեւ թէ՛ հօր եւ թէ՛ որդւոյն նկարագիրներուն եւ գործերուն համար ըսուածները եւ թէ՛ թուականը քաջապէս կը համաձայնին թրքական աղբիւրներու եւ Միխայէլ Ասորւոյ տուիքներուն հետ»:

*Արդարեւ մեծ հաւանականութիւն կայ, ինչպէս կը տեսնուի։*

*Այս մասին զօրաւոր փաստ մը կրնայ համարուիլ դարձեալ Կոմմագենացիի* (*յաւելուած, էջ ժ.*) *սա խորհրդածութիւնը.* — «Անշուշտ նշանակութեան արժանի է Դանիշմանդի եւ յաջորդներուն դրամներու վրայի նշանագրերուն երկար ատեն *յունատառ* ըլլալու պարագան, ինչ որ ամենազօրաւոր փաստ մը կրնայ համարուիլ անոնց *քրիստոնէական* ծագում ունենալու վարկածին: Դանիշմանդներու մէկ կողմէն *պարսկական* եւ միւս կողմէն *յունական* հակումներ ունենալը՝ աւելի *վրացական* նկարագրի մը պատճառ կը համարուի քան հայկականի: Եթէ ուղիղ է մեր ենթադրութիւնը թէ Դանիշմանդ եւ Լիպարիտեան Խանէի որդին միեւնոյն անձն է, այն ատեն, 1071է առաջ զրկուած ըլլալու է այն իր Արշամունեաց եւ Տարոնի կողմերը ունեցած կալուածներէն: Արդեօք ո՞վ զրկեց զինքը, Փիլարտո՞ս թէ Թոռնիկ: Վերջինը աւելի հաւանական կ'երեւի, քանի որ Ճապաղջուրն եւ Աշմուշատը 1073ին Թոռնիկի ձեռքը կը գտնուէին»:

*Ինչ որ ալ ըլլայ իր ծագումը՝ Թուրքման, Հայ կամ Վրացի, ամենայն դէպս Ահմէտ Տայլու, պէտք է անվարան յայտարարենք թէ հարկադրանքի տակ թերեւս իսլամացող, իր նախկին հաւատակիցներուն նկատմամբ բարեացակամ եղած է, թերեւս համոզեալ մը չըլլալուն համար։*

*Մասնաւորապէս իր զաւակին և յաջորդին՝ Ահմէտ Կիւմիւշթէկին*

---

*քըննին միտք մը ունի, ինքն ալ չէ անդրադարձած այս նոյնութեան։ Իվանէն ես արդէն յիշեցի երբ Թուրքերը առաջնորդող դէպի Կողբիս, հիմնուելով Լաստիվերտցիի վրայ (տես 123-4)։ Այս իրողութեան անդրադարձած են նաև* Finlay, *Բ.* 20, Lebeau, *ԺԴ.* 437, Saint Martin, *Բ.* 230, *ինչպէս նաև* Laurent, «Byz. et les Turcs», 42, *Ատտալիատէս* (111) *ժամանակակից պատմագիրը կը պատմէ թէ Բիւզանդացիք Իվանէն Եփրատի վրայ Երզնկայի մէջ հաստատած էին։ Յովհաննէս, որդի Լիպարիտի, դեռ* 1058*ին ըրած է նուիրատուութիւն մը վանքի մը ընկերակցութեամբ Գրիգոր կաթողիկոսի* (Takaichwill - Zapiski*ներու մէջ Արեւելեան բաժինին «Ռուս Հնախօսական Ընկերութեան», Թ.* 1896, 59)։ *Լաստիվերտցի բաւական մանրամասն նկարագրած է Իվանէի* —«որում տուեալ էին ի պարգեւի՝ տեղիս բնակութեան զմեծ աւանն Երիզայ ի գաւառին Հաշտենից եւ որ շուրջ զնովաւ դաստակերտք»— *արարքները և Յունաց դէմ կատարած դաւերը, միայն Ապուտինարի զօրքին առաջնորդ եղող որդւոյն մասին Հայ պատմիչներուն մէջ ես տեղեկութիւն մը չկրցայ գտնել։*



*կամ Ահմէտ Պէն էլ Դանիշմանդի*(1) *կամ ըստ Բրիտ. Համայնագիտարանին Ահմէտ Ղազիի* (1084-1104) *մասին Մատթէոս Ուռհայեցիի* (368-369) *և Վարդան Պատմիչի* (112-3) *գրեթէ նոյն բառերով կ'ըսեն թէ* «մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին որ լեալ (*էր*) յազգէն Հայոց(2), այր բարի եւ շինող աշխարհի եւ էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, եւ եղեւ սուգ մեծ ի վերայ քրիստոնէից որք էին ընդ ձեռամբ նորա»:

*Այս վկայութիւնը, որ կու տան երկու Հայ պատմագիրները՝ որոշապէս կը հաստատէ թէ Դանիշմանդեանք ինչ դիրք բռնած էին քրիստոնէից նկատմամբ։*

*Այս բարեացակամութիւնը կամ թայլատու ոգին իրենց յաջողութեան գրաւականը եղած է։*

*Դանիշմանդեանց այս ուղղութիւնը, միայն իրենց սեփական չէր, այլ նաև անիկա քաղաքականութիւնը եղած էր անոնց օգնութեամբ վերակազմուած Սելջուկ Ռումի Սուլթանութեան, այս երկու դրացի պետութիւններու հիմնադրութեան սկզբնական տարիներուն, վասնզի անոնք համանման պայմաններու մէջ կազմուած, իրարու զինակից, աջակից և բարեկամ եղած էին։*

*Սակայն այս ներդաշնակութիւնը շուտով խանգարուեցաւ, երբ իրենց մէջ ինկաւ նախանձ, մրցակցութիւն և պայքար։*

*Ռումի Սուլթանութեան հիմնադիր Սիւլէյման իբն Գութուլմիշի որդին Գըլըճ Ասլան իբն Սիւլէյման* (1092-1107), *որ իր գահը կը պարտի Դանիշմանդի տան հիմնադիրին որդւոյն՝ Մուհամմէտ Իմայէլ Կիւմիւշթէկինի* (1084-1106), *որքան ատեն որ հասարակաց սպառնացող վտանգի մը հանդէպ կը գտնուէր մնաց բարեկամ և զինակից անոր։*

*Մասնաւորապէս անոնք սերտ գործակցութիւն մը ունեցան ընդդէմ Առաջին Խաչակիրներուն* (1097) *որոնք իրենց երկիրներէն կ'ուզէին անցնիլ դէպի Երուսաղէմ իրենց ճամբուն ընթացքին։*

*Անոնք մեծ չարիք հասուցին քրիստոնեայ բանակին (տես Տիգրան Սաւալանեանց,* Պատմ. Երուսաղէմի, 1931, *Երուսաղէմ, Ա, հտ.* 301-314) *մինչև որ ան հասաւ Կիլիկիա ուր Հայ իշխաններ սիրով ընդունեցին զայն և պարենաւորեցին։*

*Մատթէոս Ուռհայեցի* (*էջ* 312-313) *Խաչակրաց համար կ'ըսէ թէ* «բազմութեամբ ճանապարհ արարեալ ընդ աշխարհն Բիւթանացւոց եւ ընդարձակ բանակաւ անցանէր **ընդ սահմանս Գամրաց** եւ հասանէին ի դժուար վայրս լերանց Տորոսի»: *Ուրեմն անոնք Կապադովկիայէն ալ անցած էին։*

*Արդեօք Գոնիան ալ Կապադովկիա համարելո՞վ, այնպէս կ'արտայայտուի պատմագիրը, վասնզի Գոնիայի լքումը Գըլըճ Ասլանէն իրողութիւն մըն է։*

*Գըլըճ Ասլան կը քաշուի հիւսիս և Սեբաստիա հաստատուած Մուհամմէտ Իմայիլ Կիւմիւշթէկինի օգնութեան կ'ապաստանի, և անոր հետ կը շարունակէ կռիւը Խաչակիրներուն դէմ, որոնց պատճառած անիշխանութենէն օգտուելով երեւան կուգան աստ անդ բախտախնդիրներ, որոնք կը տիրանան բերդերու և հողերու և կը հիմնեն իշխանութիւններ։*

---

(1) Պատմ. Սեբաստիոյ (172), *այս վեհապետը կը ճանչնայ «Մուհամմէտ-Իմայէլ-Պէն-Տէնիշմէնտ Կիւմիշ-Թէկին» անունով։*

(2) «Զոմէ ասեն յազգէն Հայոց» (*Վարդան*)։

Անոնց մէջ յատուկ ուշադրութեան արժանի կը նկատեմ Սիմէոն անուն անձի մը յիշատակութիւնը, որ Փոքր Հայոց իշխանութիւնը ձեռք կ'անցնէ (*Միշօ*, Խաչակրաց Լիակատար Պատմութիւն, *գիրք Բ. և Սաւալան* Պատմ. Երուսաղէմի, *էջ* 121)։

Հոս Փոքր Հայք բացատրութեամբ կը կարծեմ թէ պէտք չէ հասկընալ Սեբաստիոյ մերձակայ շրջանակը, այսինքն հին Փոքր Հայքը և ո՛չ ալ Կիլիկիան որ իր այս անունով կը ճանչցուի այդ թուականներուն, այլ աւելի Արգէոսի շրջանակը որ ինչպէս ըսինք Հայկական Երկիրներ կը կոչէին Խաչակիր պատմագիրները և ապահովաբար Մեծ Հայքէն զանազանելու համար Փոքր Հայք կ'անուանէին։

Եթէ ճիշդ է այս նկատողութիւնը, և եթէ պէտք է տառական իմաստով առնել Ուռհայեցիի խօսքերը թէ «ընդ սահմանս Գամրաց» անցած են, ուրեմն Խաչակիրները Դանիշմանդեանց սեփական երկիրներն ալ ոտնակոխ ըրած են։

Արդարև Մուհամմէտ Իսմայէլ Կիւմիւշթէկին Խաչակիրներուն հետ ունեցաւ կռիւներ և գերի բռնեց Անտիոքի Պոհեմոնդ իշխանը (1099ին) որ յետոյ փրկանքով ազատեցաւ (Բրիս. Համայն.), և հարկատու եղաւ Դանիշմանդի որ իսլամութեան դրօշը բարձր բռնեց Փոքր Ասիոյ մէջ և օգնեց Գըլըճ Ասլանի որ շարունակ կը նեղէր անվհատ յարատևութեամբ մը Խաչակիրները, ասպատակութիւններով և անակընկալ յարձակումներով։

Խաչակիրները իրապէս չէին տիրապետած Փոքր Ասիոյ, այլ զայն ճեղքած էին արշաւանքով մը որ հաստատուն տիրակալութիւն մը չէր։ Այնպէս որ Թուրքերը կը յաջողէին հոն երևալ վերստին և ահագին չարիք հասցնել, կոտորել ինչպէս Խաչակիրներու յառաջապահները նոյնպէս նաև վերջապահները որոնք նուազ կանոնաւոր և նուազ կազմակերպուած խումբեր էին, թուով նուազագոյն 400,000 անձեր, որոնք կու գային կորսուիլ Փոքր Ասիոյ մէջ։

Ասոնցմէ կարևոր մաս մը Կապադովկիոյ մէջ անէացած է։ Այսպէս Պոտուին կոմսին առաջնորդութեան տակ գտնուող բանակ մը սպառած է մաս մաս և անէացած է Թուրքերէն Աւլոսի (Avlos) դաշտին մէջ, որ կը կարծուի ըլլալ Նիկտէի շրջակայքը Իւչ Գարու (Lebeau, նոյն, 361 և յաւելուած, Asie Mineure, 517)։

1102ին 30,000 Լոմպարտացիներու բանակ մը գլխաւորութեամբ Anselme, Միլանի արքեպ.ին ճեղքեց Բիւզանդական կայսրութիւնը հազար աւարառութիւններ ընելով։ Միևնոյն ատեն հասան 2000 Ալմաններ՝ առաջնորդութեամբ Գերմանիոյ կայսեր Գունդստապլը՝ Դոնրատի և յետոյ Էտիէն Շարդրի կոմսը՝ որ ամօթապարտ լքած ըլլալուն համար իր զէնքի ընկերները, կու գար լրացնել իր փափաքը։ Այս տարբեր բանակները, միացած ու ստուարացած ամէն ազգի հազարաւոր խայտաբղէտ բախտախնդիրներով, կը մտնէին երկրին ներսերը, կը կողոպտէին Գաղատիոյ մէջ Անկիւրիան, որ Յոյն կայսեր կու տային, և կ'անցնէին Ալիս գետը և Ամասիոյ ուղղութեամբ կ'առաջանային, առանց կարենալ հոն հասնելու, վասնզի կը մեռնէին անօթութենէն անմարդաբնակ այս երկիրներուն մէջ, և ցիրուցան կ'ըլլային Թուրք հեծելազօրքէն, մղելէ յետոյ Կապադովկիոյ մէջ ահեղ ճակատամարտ մը —ուր կ'ըսուի թէ կը ջարդուին 50,000 քրիստոնեաներ — կը դառնային ետ։ Այս և նման ձախողածներուն մէջ ո՛չ նուազ կա-



րևոր դեր ունէր Ալէքս Յոյն կայսեր դաւաճանութիւնը։ Ալէքս նոյնիսկ չէր վարանած դիմելու Ռումի Սելջուկ Սուլթան Գըլըճ Ասլանի օգնութեան, Խաչակիրներու դէմ, որոնք զայն Նիկիայէն և Գոնիայէն վանած էին։

Գըլըճ Ասլան որ թշնամացած էր Դանիշմանդ Մուհամմէտ Իսմայէլ Կիւմիւշթէկինի, միացաւ Ալէքսի։ Միւս կողմէն Խաչակիրները դառնացած Ալէքսի դէմ, չեն տատամսիր իսլամներու ձեռք երկարել։

Պոհեմոնդ նոյնիսկ չվարանեցաւ դաշինք կնքելու իսլամ Դանիշմանդեանց հետ «ընդդէմ Կ. Պոլսոյ Ալէքս կայսեր եւ Գըլըճ Ասլանի, ասով տալով մէկը այն փաստերուն թէ քաղաքական նկատումները աւելի կարեւոր են քան թէ կրօնական տարբերութիւնը, ո՛չ միայն Խաչակիրներուն միջեւ այլ նաեւ իսլամներու մէջ» (*տես* Herbert M· Y· Loewe, The Cambrige Medieval History, *Դ. հտ.* 315)։

Այսպէս քրիստոնեայք ալ, իսլամներն ալ պառակտեցան, և Խաչակրութեան սկզբնական նպատակը խաթարուեցաւ,

Իսլամներուն մէջ ստեղծուած պառակտումը աղէտաբեր պիտի ըլլար իրենց համար, վասնզի Դանիշմանդի և Սիւլէյմանի տուները, որքան ատեն որ իրարու զինակից և գործակից էին, կրցան ուժգին հարուածներ տալ Խաչակիրներուն, բայց անգամ մը իրարու դէմ ելլելէ յետոյ, տկարացան, մասնաւորապէս Դանիշմանդի տունը, այս պատճառով բոլորովին բնաջնջուեցաւ։

Դանիշմանդի տան իշխողները այլեւս մշտական պայքարի կը բռնուէին, մինչև որ իրենց երկիրները կ'անցնին Իկոնիոյ Ռումի Սուլթաններուն։

Այս պատերազմներուն մանրամասնութիւնները պիտի չտամ հոս, այլ միայն մի քանի մասնաւոր դէպքեր, որոնք Կապադովկիոյ հետ կապ ունին, կ'ուզեմ նօթել։

Ասոնց առաջինն է՝ Մուհամմէտ Իսմայէլ Կիւմիւշթէկինի յաջորդ Էմիր Ղազի Պէն Մուհամմէտ Կիւմիւշթէկին՝ կամ պարզապէս Միր կամ Էմիր Ղազիի (1106–1135) օրով կոտորածի մը յիշատակութիւնը որ այս Սուլթանը կատարած է Կապադովկիոյ մէջ Մալաթիոյ շուրջ մղուած կռիւի մը պատճառով։

«Զօրացեալ Ամիր Ղազի՝ **ջնջեաց զԹուրքն որ կային յերկրին Կապադովկացւոց** եւ ինքն միայն թագաւորեաց» (*Միքայէլ Ասորի*, 413)։

Այս խօսքերէն կը հասկցուի թէ Դանիշմանդ ո՛չ միայն կը գրաւէր Մալաթիան, այլ նաև Կապադովկիայէն բոլորովին կը վանէր Սելջուկները և ինքն միահեծան կը թագաւորէր։ Իր յաջորդն ու որդին Մելիք Մուհամմէտի կամ Մելիք Մուհամմէտ Տօլաթի (1135–1143?) համար Մատ. Ուռհայեցի և Միքայէլ Ասորի (414), կ'ըսեն թէ «էր նա ատեցող քրիստոնէից, եւ կայր նա օրինօքն Տաճկաց, գինի ոչ ըմպէր եւ վայրապար ոչ զնայր ի վարս իւր»:

Ան իր հակաքրիստոնեայ ոգին կ'արտայայտէ քրիստոնեայ մեծ կեդրոնին Կեսարիոյ մէջ իսկ, ուր «քակեաց բազում եկեղեցիս» (*Միքայէլ Ասորի*, 414), բայց միևնոյն ատեն քաղաքը պաշտպանելու միջոցներ ձեռք կ'առնէ, վասնզի կ'ըսուի թէ «նա շինեաց զԿեսարիոյ պարիսպն» (նոյն)։ Իր հակաքրիստոնեայ ոգին ցոյց տուած է նաև 1136ին դէպ ի Մարաշ և Քեսուն կատարած արշաւին ատեն որ նկարագրած է Մատ. Ուռհայեցիի շարունակողը Գրիգոր Երէց (462–468)։

Այս ոգին իր յաջորդներն ալ պահած են, մինչև որ այս իշխանութիւնը վերջ գտած է 1175ին։

Այս իշխաններէն Եաղուպ Ասլանի (1143–1165) առենն է որ Բ. Խաչակրութիւնը (1145-1148) կը պատահի։

Մանուէլ կայսրը, որ յայտնապէս դաւած է Խաչակիրներուն դէմ, և անյաջողութեան մատնած այս խաչակրութիւնը, Գերմանիոյ Գոնրատ Գ. կայսեր առաջնորդութեամբ առաջացող Խաչակիրները փճացուց Կապադովկիոյ մէջ, անոնց տալով առաջնորդներ, որոնք փոխանակ զանոնք տանելու արեւմտեան նահանգներու մէջէն, Յոյն պահակներու պաշտպանութեան տակ, անցուցին Կապադովկիոյ անջրդի դաշտերէն և զանոնք Տաւրոսի կիրճերը մտցնելէ յետոյ անհետացան և մատնեցին իրենց դաշնակից Թուրքերու ձեռքը որոնք կը թեւածէին անոնց չուրջը իրենց թեթև հեծելազորքով, և չարունակ զանոնք տագնապի մատնելէ յետոյ խոյս կու տային առանց հետապնդուելու կարելիութեան։ Այս կողմնակի հարուածները որ Թուրքերը տուին տասանորդեցին այս բանակը որուն թիւը անհամեմատ պակսեցաւ և մէկ տասներորդին իջաւ։

Բ. Խաչակրութիւնը պատճառ եղաւ որ Ռումի Սելջուկ Սուլթանութիւնը և Դանիշմանդի տունը իրարու հետ պահ մը հաշտուին։ Սակայն Մասուտ Ա. Ռումի Սելջուկ Սուլթանին մահէն յետոյ, երբ իր որդին Աւէտուին Գըլըճ Ասլան Բ. (1156–1193) գահ կը բարձրանայ, կ'արծարծուի նախկին հակառակութիւնը։ Եաղուպ Ասլան, որ ինչպէս ըսինք, գերիշխան դիրք ունենալ կը յաւակնէր չի հանդուրժեր որ Գըլըճ Ասլան Բ. հալածէ իր եղբայրը՝ Շահանշահը այն որ «էր փեսայն տանն Դանիշմանայ» և խեղդէ իր միւս եղբայրը։ Շահանշահը ազատած էր իր եղբօրը պէս սպանուելէ, փախչելով Սեւ Ծովու եզերքը և ամրանալով այն բերդերուն մէջ «զոր տուեալ էր նմա հայրն իւր նախ քան զմահն իւր» (Միքայէլ Ասորի, 430), և որոնք Զանկըր և Անկիւրիա ըլլալը կը հաստատէ Գրիգոր Երէց, ժամանակակից Հայ պատմագիրը, որ կը յարէ թէ Գըլըճ Ասլան Բ. ոչ միայն իր եղբայրները սպանած էր «այլեւ զայլ մեծամեծս իւր եւ զամիրայսն եւ զմեծ իշխանն հօր իւրոյ ... եւ զխասին իւրոյ հօրն» (Գր. Երէց, 518)։

1157ին «իբրեւ ետես զայս մեծ ամիրայն Եաղուպ Ասլան, որ էր որդի ամիր Խազեայ եւ տէր Սեբաստիոյ եւ աշխարհին Գամրաց, ոչ հաւանեալ նմա՝ զօրաժողով արարեալ զբազմութիւն հեծելոց, եկն յերկիրն Լիկաոնին եւ տարեալ զքրիստոնեայս յերկիր իւր եւ զամուրն Լարիս եւ զայն եւս էառ» (Գր. Երէց, 518)։ Քրոնիկագիրը «զայսոսիկ զրուցեաց վասն եղբօրորդւոյ իւրոյ՝ որ ունէր թշնամութիւն ընդ նմա» կ'ըսէ չփոթ կերպով մը, ինչպէ՞ս և ինչո՞ւն առանց ճշդելու։ Միքայէլ Ասորի (430) շատ սեղմ տողերով կը հաստատէ Եաղուպ Ասլանին պատերազմի բռնուիլը Գըլըճ Ասլան Բ.ի ոճիրներուն համար «վասն այնորիկ ձեռն ետ նմա Աղուբ Ասլան հօրեղբօրորդին իւր եւ աւերէր զերկիր Խլիճ Ասլանայ» գրելով։ Սակայն յետոյ կը հաշտուին «ի վերին յերեսս»։ Բայց Դանիշմանդ Եաղուպ Ասլան երկու ամիս յետոյ «եկն զաղտագողի յերկիրն Ջահնայ ի մայրաքաղաքն Ապլաստա... մոռացեալ զգութ հայրենի սիրութեան Սուլթանին»՝ այսինքն Գըլըճ Ասլան Բ.ի։ Իկոնիոյ այս Սուլթանը, որուն դէպ ի Քրիստոնեաները բարեացակամ տրամադրութիւնը մեր պատմագիրները դէպ ի ինքն լաւ տրամադրած ըլլալ կը թուին, կ'անապարէ Եաղուպ Ասլանի դէմ երթալու



և Ալպիսթանը փրկելու և վրէժ լուծելու անկէ։ «Եաղուպ Ասլան իմացեալ զգալուստ նորա, առեալ զերկիրն ամենայն ոգիս իբրեւ եօթանասուն հազար, տարեալ յերկիրն ոչ գերութեամբ» (Գր. Երէց, 519)։ Գըլըճ Ասլան Բ. թէև կը հետապնդէ սակայն չի կրնար ետեւէն հասնիլ «վասնզի ընդ մոլար ճանապարհ գնաց տանելով զքրիստոնեայսն» (Գր. Երէց, 519)։ Ուստի Գըլըճ Ասլան կը մտնէ «յերկիրն Լիկաոնին. եւ նոքա ծանծրացեալ յահաւոր եւ ի մեծ դժարէ նորա եկին յօժարութեամբ զհետ Սուլթանին՝ երդմամբ ընկալեալ զնոսա ոչ տանելով յետս զոր գնացին զհետ նորա» (Նոյն, 519)։ Ան ալ ուրեմն իր կարգին կ'ուզէ հրապուրել իր հակառակորդին հպատակները և իրենց կամքովը տեղափոխել։

Եաղուպ Ասլան իր տարած 70,000 քրիստոնեաները «ամրացուցեալ զտարեալսն յերկիրն իւր» այս անգամ կը դառնայ Գըլըճ Ասլան Բ.ի հետ պատերազմելու։ «Եկն բանակեցաւ ընդդէմ Սուլտանին ճակատ առ ճակատ» սակայն «առաջնորդք նոցա ընդ մէջ անցեալ ոչ տային պատերազմել» (Գրիգ. Երէց, 520), որով թերեւս դարձեալ առ երես հաշտուած են երկու վեհապետները։ Անոնց իրարու հետ կռուած առենը Թորոս Կիլիկիոյ իշխանին եղբայրը «պարոն Ստեփանէ անդադար աւերէր զաշխարհ երկոցունցն» (Միքայէլ Ասորի, 439)։

Այս կռիւներուն խառնուած է նաև Սուրիոյ զօրաւոր Աթաբէկը՝ Նուրէտտին, իսլամութեան այս անխոնջ ախոյեանը, որ Դանիշմանդեանց օգնած է, վասնզի Գըլըճ Ասլան Բ. բարեկամ եղած էր քրիստոնեայ Խաչակիրներուն և Սուրիոյ լատին իշխանութեանց, որոնք հաւաքուած էին Երուսաղէմի Պաղտին Գ. թագաւորին չուրջը, Կիլիկիոյ Թորոս իշխանին և նոյնիսկ անոր եղբօրը Ստեփանէի հետ, որոնց դէմ բուռն կերպով կը կռուէր Նուրէտտին, իսլամ դաշնակցութեան մը գլուխը անցած։

Գըլըճ Ասլան իսլամ ըլլալով թեքած էր դէպի քրիստոնէից կողմը, վասնզի Դանիշմանդ Եաղուպ Ասլան՝ իր հակառակորդը, Նուրէտտինի կողմն էր։

Ընդհանուր համաձայնութիւն մը գոյութիւն չունէր ուրեմն այս պատերազմին մէջ Թուրքերու մէջ, ինչպէս նաև Հայերուն, որոնցմէ մաս մը, համաձայն չէին Թորոս իշխանին այլ Մլեհի՝ անոր եղբօրը որ դաւաճան նկատուած և հալածուած Հայ երկրէն, ապաստանած էր Նուրէտտինի քով (1167)։

Մլեհ, անշուշտ կը նախատեսէր այն վտանգները որ կը հրաւիրէր Հայոց վրայ Թորոսի Ֆրանքներու հետ դաշնակցութիւնը և աւելի տրամաբանական կը գտնէր դրացի իսլամ զօրաւոր պետութեան բարեկամութիւնը։ Այս պատճառով անիկա կը գործակցի Նուրէտտինի հետ (1170) և 1173ին Գր. Տղայ կաթողիկոսը Նուրէտտինի պաշտպանութեամբ հայրապետական աթոռ կը բարձրացնէ (Միսուան, 56 և 57)։

Գըլըճ Ասլան Բ. որ իր նպատակին հասնելու համար ամէն միջոցի առջև վարանող տիպար չէ, Եաղուպ Ասլանի հետ այնքան մաքառելէ և զայն տկարացնել աշխատելէ յետոյ, չէ քաշուած ի հարկին անոր հետ հաշտուելու։

Ան իր քանի մը կռիւներէն յետոյ նոյնիսկ պառակտեց անոր երկիրը Կեսարիոյ Տանուն ամիրան(1) սիրաշահելով և իր կողմը անցնե-

(1) Տըլլուն ալ կոչուած է. որդի Մելիք Մուհամմէտի և եղբայր Եաղուպ Ասլանի։

լով, իրողութիւն որ Միքայէլ Ասորի (439) շատ իրաւամբ կը նկատէ «սկիզբն քակման տանն Դանիշմանանց»:

Այս պառակտումը կատարելէն յետոյ սակայն երբ 1160ին կը տեսնէ թէ Նուրէտտին և Գաղտին Գ. իրարու հետ կը հաշտուին երկու տարուան դաշինքով մը, Գըլըճ Ասլան Բ. հաւանօրէն մտածելով թէ Նուրէտտին ապահովուելով իր քրիստոնեայ թշնամիներէն կրնայ նորէն շարունակել իր արշաւանքը և զինքը նեղել, կը հաշտուի իր զօրաւոր հակառակորդին և Նուրէտտինի բարեկամին՝ Դանիշմանդ Եաղուպ Ասլանին հետ, «տալով ի ձեռս նորա զԱպլասթ (= Ալպիսթան) քաղաք եւ զգաւառս նորա (= Ջահան) որ իւր էր եւ հօր իւրոյ յառաջագոյն, զի զայն ուզէր 'իշմորիլն իւրեանց» (Գր. Երէց, 541. հմմտ. Միքայէլ Ասորի, 441):

Սակայն շատ կարճ կը տեւէ այս հաշտութիւնը, վասնզի յաջորդ տարին իսկ (1161) Գըլըճ Ասլան դարձեալ պատերազմի կը բռնուի և դարձեալ կը հաշտուի (Միխայէլ Ասորի, 442-443) վեհանձնութեամբ և ինքզինքն կը նուիրէ իր պետութեան ներքին միութիւնը վերակազմելու աշխատանքին վասնզի շատ մը ամիրաներ ցոյց կու տային անջատողական հակումներ: Անոնցմէ մէկն էր Կեսարիոյ ամիրան Տանուն, որ յարած էր իր հակառակորդին՝ Գըլըճ Ասլանի:

«Աղուբ Ասլան հնազանդեաց զՏանուն եղբօրորդի իւր, որ ապստամբեալ էր ի Կեսարիոյ Հայոց եւ չոգաւ ի Կամաւի որ է ի Կամախ եւ սպան զապստամբ ամիրայն որ կայր անդ» (Միք. Ասորի, 448): Սակայն տակաւին իր ձեռնարկին սկիզբը «հասեալ ի Գանգրա (= Չանկըրը) որ է ի վերայ Ալիս գետոյ՝ մեռաւ (1165)» (Միք. Ասորի, 450): «Եւ փութացուցեալ զօրացն թագաւորեցուցին զԻսմայիլն զեղբօրորդին Աղուբ Ասլանայ եւ արարին միաբանութիւն ընդ Տանուն ամիրայն Կեսարիոյ: Իսկ զօրքն որ կային յԱպլսթայն թագաւորեցուցին զՄահմուտ զորդին Մահմուտի (Մահատիի)» (Միք. Ասորի, 450):

Ինչպէս կը տեսնուի այս կերպով Դանիշմանդի իշխանութիւնը, որ իր մէջ կը պարփակէր Եաղուպ Ասլանի իշխանութեան շրջանին Սեբաստիա, Կեսարիա, Ամասիա, Նէոկեսարիա, Թոքաթ, Կամախ, Մալաթիա, Կիւրիւն, Ալպիստան քաղաքները իրենց գաւառներով, կը բաժնուի երկուքի և Կեսարիոյ ամիրան Տանուն որ երբեմն ապստամբ էր, այս երկու բաժանումներէն Հիւսիսայինին կողմնակից կ'ըլլայ:

Իսմայէլի իշխանութեան շրջանին և դեռ սկիզբը (1165) Գըլըճ Ասլան կը զօրանայ և ինչպէս կ'ըսէ Միխայէլ Ասորի (451), կ'առնէ «զԿատուկն եւ զԱպլսթայն եւ զՏարանդա ի ձեռն Տանունին եւ հալածեաց զորդիսն Դանիշմանայ» (Նոյն): Այս տողերէն կը հասկցուի Գըլըճ Ասլան Բ.ի յարաբերութիւնները Տանունի հետ, որ Իսմայէլի իշխանութիւնը կիսող Մահմուտի երկիրները արշաւած է Գըլըճ Ասլան Բ.ի օժանդակութեամբ կամ Գըլըճ Ասլան՝ Տանունի թելադրութեամբ հալածած է Դանիշմանդի այս հակառակորդները:

Սակայն Գըլըճ Ասլան անգամ մը Մահմուտը ընկճելէ յետոյ, ապահովաբար անցնելով անոր երկիրներէն, վասնզի Ալպիստան և Տարէնտէ երթալու համար պէտք էր կամ անկէ կամ Կիլիկիայէն անցնիլ, դարձաւ Տանունի ալ դէմ և 1169ին «էառ զԿեսարիա եւ զԾամնդաւ յորդւոց Դանիշմանայ» (Միխ. Ասորի 458):

Տանուն՝ որ որդին էր Մելտինէի Մելիք Մուհամմէտ ամիրային, այդ թուականին յաջորդած էր իր հօրը՝ Մելտինէի ամիրայական աթոռը երբ Գըլըճ Ասլան Բ. տիրեց Կեսարիոյ 1169ին:



Տանուն այն ատեն փախաւ Դամասկոս Նուրէտտինի քով:

Իսմայէլ «ամիրայն Սեբաստիոյ Դանիշման» (Միխ. Ասորի, 469) զգալով վտանգը որ իրեն կ'սպառնար, իր հօրեղբօրը պէս կը խորհի Գըլըճ Ասլանի պետութիւնն պառակտել և Շահնշահի (Իկոնիոյ Սուլթանին եղբօրը) հետ 1172ին անոր դէմ կ'ելլէ (Միխ. Ասորի, 468):

«Կլիճ Ասլան եկն ի Մլդենի (1172) եւ ոչ կարաց առնուլ զնա եւ առեալ գերի անձինս երկոտասան հազար եւ դարձաւ անդրէն: Իսկ Նուրադինն ժողովեալ զամենայն ամիրայսն եւ զԻսմայիլ Դանիշմանայ եւ զՇահնշահ եղբայր Կլիճ Ասլանայ եւ գնացին ի Կեսարիա եւ Սուլտանն ոչ կամեցաւ ելանել ընդդէմ նոցա եւ առաքեցին առ նա զի տացէ յաշխարհէն բաժին եղբօր իւրոյ: Եւ որդիք Շահնշահին կային առ նմա հինգ եւ նա էառ զմի յորդւոց նորա եզեն եւ խորովեաց եւ առաքեաց առ հայրն եւ ասաց «թէ ոչ երթաս այսի, զչորս որդին դոյնպէս առնեմ»: Եւ յորժամ տեսին զայն երկեան եւ արարեալ խաղաղութիւն՝ դարձան: Եւ կալաւ ցաւ զՆուրադինն եւ հիւանդացաւ եւ անկաւ շփոթ մեծ, եւ բազում գործակալք յարեան ի վերայ իրերաց եւ կոտորեցին զմիմեանս, եւ եղեւ յոյժ վնաս եւ պակասութիւն Քրիստոնէից վասն շփոթոյ իրացն այնոցիկ» (Միխ. Ասորի, 468):

Դժբախտաբար Դանիշմանդի հարստութեան մէջ պառակտումը ինկած էր:

Կապադովկիոյ իշխանները 1174ին կ'սպանեն Իսմայէլ ամիրայի Սեբաստիոյ Դանիշմանդը, Եաղուպ Ասլանի եղբօրորդին և յաջորդը (Միխ. Ասորի, 469): Իրեն կը յաջորդէ Տանուն Կեսարիոյ հալածական ամիրան որ իր իշխանութեան գլխաւոր քաղաքին՝ Կեսարիոյ 1169ին գրաւումէն յետոյ փախստական Դամասկոս ապաստանած էր (Նոյն, 469): Գըլըճ Ասլան՝ Տանունի վրայ կ'երթայ դէպի Սեբաստիա, սակայն Նուրէտտին Հալէպի Սուլթանը կը փութայ դէպի Սեբաստիա և կը հարկադրէ Իկոնիոյ Սուլթանը որ քաշուի անկէ:

Տանուն շնորհիւ Նուրէտտինի և կերպով մը անոր հովանաւորութեան և գերիշխանութեան տակ Սեբաստիոյ Դանիշմանդեան ամիրա կը դառնայ (Միխ. Ասորի, 470)·

Միայն հոս անորոշ կը մնայ թէ Կեսարիա որ գրաւուած էր 1169ին Գըլըճ Ասլանի կողմէ մնա՞ց Տանունի իշխանութեան տակ թէ Իկոնիոյ Սուլթանին տիրապետութեան անցաւ: Հաւանական է մտածել թէ Դանիշմանդի վերջին ժառանգին տրուած ըլլայ վերստին:

Տիրապետութիւնը եթէ կատարուած ըլլայ իսկ, շատ կարճ պէտք է տեւած ըլլայ, վասնզի Տանունի հովանաւորը և պաշտպանը Նուրէտտին կը մեռնի 1174ին, 28 տարի իշխելէ յետոյ Սուրիոյ և Գըլըճ Ասլան առիթէն օգուտ քաղելով կրկին կու գայ Սեբաստիա և զայն կը գրաւէ:

Յետոյ կը տիրէ Կոմանայի, Նէոկեսարիոյ և վերջ կու տայ Դանիշմանդ իշխանութեան (Միխ. Ասորի, 474), թէև տակաւին մի քանի քաղաքներու մէջ, ինչպէս Մալաթիա, կարճ ատեն մը այդ տունէն անձեր կը պահեն իրենց ազազուն իշխանութիւնները (Միխ. Ասորի, 482-483):

Ինչ որ ալ ըլլայ Կապադովկիա կը փոխէր իր տէրը և Դանիշմանդեան իշխանութեան կը յաջորդէր Սելճուկեան Իկոնիոյ Սուլթաններու տիրապետութիւնը:

---

ԺԱ.

# ԴԱՆԻՇՄԱՆԴԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ ՀԱՅՈՑ ՎԻՃԱԿԸ

**(1080 — 1169)**

---

Դանիշմանդի տիրապետութեան կ'ենթարկուէր Կապադովկիա 1080ին, իբր գլխաւոր քաղաք ունենալով ըստ Միխայէլ Ասորիի (398) Սեբաստիան և Կեսարիան։ Ուստի ամէն տարակոյսէ դուրս է թէ մեր մանաւոր չահագրգռութեան առարկայ եղած հարաւային Կապադովկիան, Արգէոս լերան չուրջ բոլոր գտնուած գիւղերը և քաղաքները, որոնք կը պարունակէին նշանակելի հայաբնակութիւն մը, ենթարկըւած են Դանիշմանդի իշխանութեան, և մօտաւորապէս մէկ դար, այսինքն մինչեւ 1169, մնացած են այդ իշխանութեան տակ։

Երբ երկիրը իսլամ տիրապետութեան ենթարկուեցաւ, հոն կար խոշոր թուով հայութիւն մը որ այս շրջանակին մէջ համախմբուած էր սկսեալ Բիւզանդական շրջանէն և ստուարացած՝ մանաւանդ Հայ Բագրատունի թագաւորութեան երկու վերջին Գագիկներուն՝ Աբասեանի և Աշոտեանին այդ տեղերը տեղափոխուելէն յետոյ։

Ինչպէս Սենեքերիմ Արծրունի իր պարագաներով և հետեւորդներով և ժողովուրդով փոխադրուած էր Սեբաստիա, նոյնպէս Կարսի Գագիկ թագաւորը՝ պէտք էր իր հետը տարած ըլլար բազմութիւն մը հետեւորդներու, եթէ ո՛չ ժողովրդեան, որ հաւանօրէն Մանազկերտի պարտութենէն յետոյ ինքնաբերաբար անոր չուրջը բոլորուած է։

Գագիկ Աշոտեան որ Պիզու հաստատուած էր ո՛չ ինքնաբերաբար այլ բռնի, և գրեթէ աքսոր կը գտնուէր, ուղղակի Կ. Պոլսէն հոն տարուած, պէտք էր իր հետ ունեցած ըլլար կամաւորապէս իրեն միացած ազատագունդ զինուորականներու և ազգականներու բազմութիւն մը։

Պատմութիւնը կը վկայէ թէ երբ Գագիկ Աշոտեան սպանուեցաւ իր ազգականը Ռուբէն զինուորականներով անցաւ Տաւրոս լեռներու վրայ և հոն ամրացաւ։

Հաւանական է մտածել թէ երբ այս շրջանները իսլամական տիրապետութեան ենթարկուած են, շատեր, մանաւանդ Հայ ստուեր թագաւորութեանց արքունիքներուն վերջին մնացորդները, Փիլարտոսի քով ամփոփուած են, յետոյ Քեսունի Գող Վասիլին և ապա Ռուբէնին երկիրները անցած են կամ աւելի հեռուն Քրիստոնեայ երկիրներ գացած։

Սակայն կարեւոր Հայ բնակչութիւն մը միշտ մնացած է Կեսարիոյ և շրջագայից մէջ, ինչպէս կը հաստատուի պատմութենէն։

Քիչ յետոյ, հազիւ 16-17 տարիներ յետոյ Խաչակիրները երբ կը հասնին հարաւային Կապադովկիա, հոն կը գտնեն բնակչութիւն մը որուն մեծամասնութիւնը Հայ էր, ուստի այս պատճառով ժամանակակից Խաչակիր պատմագիրներէն ոմանք այդ երկիրը կը կոչեն Hermoniorum Terra «ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԿԻՐ» անունով (Բրիտանական Համայնագիտարան):

Անկարելի է մտածել թէ այս Հայ մեծամասնութիւնը գոյացած է երկրին Դանիշմանդի տիրապետութեան ենթարկուելէն անմիջապէս յետոյ նոր գաղթականութեամբ մը, այլ ամէն հաւանականութիւն կայ հաստատելու թէ անոնք նախապէս այդ շրջանակին մէջ համախմբըւած Հայերն էին որոնք հոն մնացեր էին, ապահովաբար խոյս տալու ժամանակ ալ չունենալով։

Այս բազմութիւնը պիտի լքէր իր այս նոր հայրենիքը ապահովաբար եթէ Դանիշմանդեան իշխանութիւնը իրենց համար ստեղծէր անտանելի կեանք մը։ Այս տեղափոխութիւնը շատ տրամաբանական պիտի ըլլար, նկատելով թէ Տաւրոսի կատարներուն վրայ և աւելի անդին կազմուած էին երկու Հայ իշխանութիւններ, Ռուբէնի և Գող Վասիլի գլխաւորութեամբ։ Ընդհակառակը՝ այդ գաղթականացումը չէ պատահած և հոն եկած են Խաչակիրները և գտած են Հայ այնքան խիտ բնակչութիւն մը որ զայն «Հայկական Երկիր» կոչած են։ Ուրեմն Հայերը հոն մնացած էին և պէտք չէին տեսած մեկնելու։ Ասոր մեկնութիւնը կու տայ Սելճուկեանց պատմութիւնը՝ ընդհանրապէս և Դանիշմանդեանց և Իկոնիայի Սելճուկ Սուլթաններու պատմութիւնը՝ մասնաւորապէս։

Սելճուկեանք իրենց տիրապետած երկիրներու՝ յատկապէս ոչ-օրթոտոքս քրիստոնեաներուն նկատմամբ, վերին աստիճանի թոյլատու քաղաքականութիւն մը ընդգրկեցին և ասոր կը պարտին առաւելապէս իրենց յաջողութիւնը Փոքր Ասիոյ մէջ։

Թէեւ Գերման գիտուն մը (Zimmerer, ՀԱ. 1900) կ'ըսէ թէ Սելճուկեանք ստիպեցին շատերն Կապադովկիոյ բնակիչներէն ընդգրկել Մահմետական կրօնքը և այսպէս Արաբներու նման անոնց կը վերագրէ բռնի իսլամացման արարք, սակայն գոնէ իրենց տիրապետութեան սկիզբը այս տեսակ իրողութեան մը յիշատակին երբեք չենք հանդիպիր։

Պատմութիւնը որոշապէս կը յիշատակէ թէ Սիւլէյման Իբն Գութթուլմիշ (1072–1086) Դանիշմանդ Մուհամմէտ Իսմայէլ Կիւմիւշթէկինի զինակիցը, և անոր հողերէն անցնելով Փոքր Ասիա արշաւող Սելճուկը, որ Մելիքշահի (1072-1092) զարմիկն էր և անկէ ստացած՝ ուղղութեան հրամանատարութիւնը, չափազանց սիրաշահող ուղղութիւն մը ընդգրկած և քրիստոնեաները իր կողմը շահելու համար անոնց նպաստաւոր կարգադրութիւններ ըրած է։

Մելիքշահ զայն ղրկած էր Փոքր Ասիա և Սուրիա արշաւելու համար (Loewe, տես The Cambridge Medieval History. Դ. հտ. 307)։

Սիւլէյման պաշտօն ունէր մինչեւ Կ. Պոլիս, Ալիսէն անդին գտնըւող երկիրները գրաւելու։ Այս քաղաքագէտ անձը, կրցաւ Արեւելքի մէջ Յունաց հասցնել ամենամեծ մահացու հարուածը վասնզի իր նոր տիրապետած երկիրներուն բնիկները սիրաշահելու հնարքը գտաւ, տնտեսական նշանակելի յեղափոխութիւն մը ներմուծելով Բիւզան-

*դական երկիրներու մէջ (Գէլցեր, 310)։ Ջնջեց ճորտութիւնը և ստրկութեան դրութիւնը և գլխահարկ վճարող հպատակը ազատ հռչակեց (Նոյն)։*

*Ռոմանոս և Վասիլ կայսրերը խիստ օրէնքներով կռիւ մղած էին մեծ կալուածատիրութեան դէմ (տես վերը, 373–376), որ առաւելապէս Արեւելքի մէջ շատ զարգացած էր քան այլուր։*

*Սիւլէյման ջնջելով ճորտութիւնը և ստրկութիւնը, գիւղացի աշխատաւորները և արտադրող տարրերը սերտիւ կապեց Սելջուկ իշխանութեան, որ առանց ատոր ալ արդէն իր կողմը ունէր իսլամ ստրուկներու և ոչ-Օրթոտոքս քրիստոնեաներու համակրութիւնը (Գէլցեր, 310)։ Հետեւաբար զարմանալի պէտք չէ թուի Արեւելքի անդարձ կորուստը որ մէկ պարզ հետեւանքն էր Բիւզանդիոնի ընդգրկած տնտեսական և կրօնական կրկնակ ձախող քաղաքականութիւններուն, որոնք իր մահը պիտի պատրաստէին ի վերջոյ։ Ուստի երբ իսլամ նոր տիրապետները քրիստոնէից կրօնի ազատութիւն տուին և տնտեսական այդ նշանակելի յեղափոխութիւնը գործադրելով նպաստեցին Փոքր Ասիոյ երկրագործ դասակարգին բարօրութեան, իրենք շատ բան շահեցան, վասնզի այս լայնմտութիւնը և սիրաշահող քայլերը, մեծապէս նպաստեցին Ռումիներու պետութեան տնտեսական կեանքին և մատակարարութեան, ինչպէս նաեւ ծաղկմանը։ Բնիկները իսլամական լուծին սիրով համակերպեցան և շէն ու ծաղկեալ Փոքր Ասիան իր վիճակին մէջ գրեթէ անցաւ Սելջուկներու ձեռքը։*

*Դանիշմանդ և Սիւլէյման իրարու հաւատարիմ գործակիցներ էին, ուստի ամէն իրաւունք ունինք ենթադրելու թէ ինչ որ Սիւլէյման գործադրած էր Փոքր Ասիոյ մէջ, նոյնը գործադրեց նաեւ Դանիշմանդ իր գրաւած երկիրներուն մէջ որոնք Եփրատէն մինչեւ Ալիս պիտի տարածուէին ըստ այն պարգեւատուութեան որ կատարուած էր Ալփասլանի կողմէն նոյնիսկ այդ երկիրներուն գրաւումէն առաջ։ Այս կարծիքը մասնաւորապէս կ'ամրապնդուի երբ աչքի առջև ունենանք Մատթէոս Ուռհայեցիի, գրեթէ ժամանակակից պատմագրին՝ տողերը* (368–369) *ուր կ'ըսէ թէ* «Մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին որ յեալ յազգէն Հայոց, **այր բարի եւ շինող աշխարհի եւ էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոց Քրիստոսի եւ եղեւ սուգ մեծ Քրիստոնէից որք էին ընդ ձեռամբ նորա»**։

*Չափազանց նշանակելի է որ այս վկայութիւնը որ կու տայ Ուռհայեցի, կը հաստատէ նաեւ Վարդան* (112–3) *գրեթէ նոյն բառերով, ի մասին իշխանի մը որուն օրով խաչակիրները կը հասնէին Կապադովկիա* (1097) *և Հայերը՝ օգնելով իսլամութեան լուծէն Ս. Տեղերը և քրիստոնեաները փրկելու առաջադրութեամբ եկող խաչակիրներու այս բանակին՝ տեղի կու տային գրգռելու իսլամներու զայրոյթը։ Արդարեւ պատմութիւնը կը յիշատակէ թէ այդ իշխանին՝ Մուհամմէտ Կիւմիւշթէկինի կամ Մուհամմէտ Պէն էլ Դանիշմանդի* (1072-1106) *իշխանութեան շրջանին կը հասնին խաչակիրները Կապադովկիա, և գործ կ'ունենան այս իշխանին հետ։*

*Այս իշխանը ապաստան տուած էր խաչակիրներէ վանուած Սելջուկի Ռումի Սուլթան Գըլըճ Ասլանի որ իր թելադրութեամբ յարձակած էր Մալաթիոյ Գաբրիէլ Յոյն իշխանին վրայ, և չէր կրցած յաջողութիւն մը ձեռք բերել, վասնզի այս Յոյն իշխանը* «դարձոյց զնա անարգանօք» (*Վարդան*, 110)(1)։

*Դանիշմանդ Մուհամմէտ Կիւմիւշթէկին կռուեցաւ նաեւ օգնութեամբ Գըլըճ Ասլանի խաչակրութեան վերջապահներէն Պաղտինի դէմ, որ ուղղակի Պաղտատի վրայ քալելու առաջադրութեամբ դէպի Կեսարիա կ'արշաւէր* (Միխայէլ Ասորի, 406. *Վարդան*, 112. Թարիխի Օսմանի Էնճիւմէնի. Ա. 178–9. *Կոմմագենացի* Փիլարտոս Հայր, 88)։

*Ապա Մուհամմէտ Կիւմիւշթէկին, որ արդէն Խարբերդը գրաւած էր, ինքը առանձինն* «եկն... ի Մլդենի եւ այրեաց զմուտքն եւ դարձաւ, եւ նոյնպէս առնէր զերեք ամ» (Միխայէլ Ասորի, 406)։

*Գաբրիէլ՝ Մալաթիան իրենց տալու խոստումով օգնութեան կը կանչէ արդէն հիւսիսային Սուրիա հաստատուած խաչակիրները, որոնց խնամիացած էր։*

*Անտիոքի իշխան Պոհեմոնդ*(2) *և քեռորդին ու զօրավարը Ռիջարտ*(3) *իրենց յաջողութիւններէն զգլխած,* «անմտաբար անպատրաստութեամբ» (*Ուռ.* 334) *դէմ ելան անհեղ և խորամանկ Թուրքին և չարաչար յաղթուեցան։ Ասոնք կը փութային օգնութեան Գաբրիէլ Մալաթացիին* Կեսարիոյ *վրայով, երբ Մուհամմէտ Կիւմիւշթէկին անոնց դէմ ելաւ Մալաթիոյ դաշտին մէջ* (1099) *և ո՛չ միայն գերի վարեց Պոհեմոնդը և Ռիջարտը այլ նաեւ ըրաւ* «կոտորումն ամենայն զօրաց Ֆռանկաց եւ **Հայոց**» (Ուռհայեցի, 334)։

*Սպանուածներու կարգին իրենց անուններովը կը յիշուին Անտիոքի Կիպրիանոս և Գերմանիկի (=Մարաշի) Գրիգորիս Հայոց եպիսկոպոսները* (*Ուռ.* 334) «որոնք կ'երեւի թէ պատերազմներուն մասնակցած են, Եւրոպայէ եկող Լատին եպիսկոպոսներու նման» *ինչպէս կը խորհրդածէ իրաւամբ Օրմանեան* (Ազգապատում, 1322) *հետեւցնելով անշուշտ Ուռհայեցիի* «որք էին զհետ Պեմնդին» *բացատրութենէն։*

*Այս տողերը փաստացի կը հաստատեն թէ Հայեր՝ կը գործակցէին Լատիններուն հետ և անոնց զինեալ օգնութեան կը հասնէին։*

*Քեսունի իշխանը Գող Վասիլ նոյնիսկ* 10,000 *դահեկան իր անձնականէն տալով և* 90,000 *դահեկան ուրիշներէ ստանալով,* 100,000 *դահեկան ինքն կը վճարէր Դանիշմանդեան այս իշխանին, ազատելու համար Անտիոքի Պոհեմոնդ իշխանը գերութենէ* (1103) (Ուռ. 363–364)։ *Երբ այս իշխանը որ այնքան զօրաւոր պատճառներ ունէր Քրիստոնեաներու դէմ ընդհանրապէս ոխերիմ հակառակորդ դառնալու, Հայ պատմագիրին կողմէ կը հռչակուի* «այր բարի» «ողորմած ի վերայ հա-

(1) «Դարձեալ ի հինգ հարիւր քառասուն եւ եօթն թուին Ղլիճ-Ասլան Սուլտանն Արեւմտից՝ թոռն Դղլմշոյ՝ գնայ ի վերայ Մելդենոյ, եւ իշխանն քաղաքին Գաւրիլն՝ անէր Կիւրապաղատին Ուռհայոյ՝ դարձոյց զնա անարգանօք»: *Շատ աւելի ճիշդ են Միխայէլ Ասորիի խօսքերը* «յայսմ ժամանակի եկն Խլիճ-Ասլան ի վերայ Մլտենոյ, եւ լուաւ զզօրանայն Ֆռանգին եւ դարձաւ»:

*Վարդան կը գրէ նաեւ* (112) «եւ նոցա (*յունաց*) նենգ գործեալ հրամանաւ իւրեանց թագաւորին (*Ալեքս կայսեր*) տարան ընդ անջրդի անապատ եւ սկարացուցեալ զնոսա՝ մատնեցին Դանիշմանայ եւ զօրացն Խլիճ-Ասլանայ, մինչ զի երեսուն արամբ միայն զերծեալ Պետեւան՝ անկաւ յԱնտիոք»:

(2) *Օրմանեան կը տառադարձէ Բոյեմոնտոս*։

(3) *Օրմանեան կը տառադարձէ Հռիքարտոս* (Ricardo)։

ւատացելոց Քրիստոսի», այնքան որ իր մահուան առթիւ քրիստոնեայք սուգի կը մտնուին, ասիկա կը նշանակէ թէ հակառակ անոր որ Հայերը նոյնիսկ զէնք առած էին իրեն դէմ, անիկա գերազանց ներողամտութեամբ վարուած էր իրենց նկատմամբ։

Աւելի պերճախօս վկայութիւն մը ի՞նչ կրնար տրուիլ։ Ասիկա գերազանց ապացոյց մը չէ՞ր թէ ինչպէս Սիւլէյման, նոյնպէս նաեւ Մուհամմէտ Կիւմիւշթէկին նոյնիսկ կրօնափոխ Հայ մը ըլլալով հանդերձ անշուշտ միեւնոյն եղանակով սիրաշահած էր քրիստոնեաները, անկենաքրիստոնեայ պատմագրին գրչով — որ հակառակ Լատին տիրապետութեան տակ գտնուող երկրի մը մէջ գտնուելուն երբեմն չի վարանիր վախով դողով իր դժգոհութիւնը յայտնելու անոնց դէմ — այս գովեստներուն արժանանալու համար։

Մուհամմէտ Կիւմիւշթէկին կատարեալ դիւանագէտի մը նրբամտութիւնը ցոյց կու տար այսպէս իր ներքին քաղաքականութեան մէջ քրիստոնէից իրեն դէմ զէնք առած ըլլալուն համար հակաքրիստոնեայ պայքարի չլծուելով, այլ նոյնիսկ իր արտաքին քաղաքականութեան մէջ ճարտարութիւն ցոյց տալով, քանի՛ որ Պոհեմոնդը արձակելէ յետոյ գերութենէ, ոտնահարելով կրօնական նախապաշարումները, որ արգելք կ՚ըլլային իսլամի մը և Քրիստոնեայի մը զինակցութեան, անիկա զինակցեցաւ Պոհեմոնդի հետ Դըլըճ Ասլանի և Կ. Պոլսոյ Ալեքս կայսեր դէմ, որոնք իրենց կարգին զինակցած էին։

Հետեւաբար որոշ է թէ Դանիշմանդեան այս իշխանը կրօնական մոլեռանդութիւն ցոյց չէ տուած և իր իշխանութիւնը նախընտրելի դարձուցած էր Օրթոտոքսութեան անունով հալածանքի ենթարկուած Հայերուն և Ասորիներուն և ճորտութեան և ստրկութեան մէջ տուայտող ամէն ազգի ժողովուրդին համար։

Այս մասին փաստեր կու տան կարգ մը ցրիւ յիշատակութիւններ որոնք ի վեր կը հանեն նշանակելի իրողութիւններ։ Այսպէս կը յիշուին այս պետութեան մէջ տակաւին իշխանական տիտղոսով Հայեր, ինչպէս Սեբաստացի Դաւիթ՝ հայրը Գոհարինեան վկաներուն (Ազգապատում, 1396) և Սարգիս իշխան՝ դարձեալ Սեբաստիայէն որ Թէոդորոս քահանայի կամ արեղայի նահատակութենէն յետոյ «խնդրեաց ի թագաւորէն զմարմին սրբոյն եւ բարձեալ տարաւ ի Ս. Նշան» (Տաշեան, Մայր-ցուցակ, 43)։ Մասնաւորապէս Սարգիս՝ կ՚երեւի թէ կը վայլէր Դանիշմանդեան վեհապետին մասնաւոր բարեկամութիւնը համարձակելու համար ուզել մարմինը քրիստոնեայի մը որ անոր հրամանովը իբր ուրացեալ իսլամ սպանուած էր։ Նոյնպէս նշանակելի իրողութիւն մըն է թէ Հայերը՝ այս իսլամ պետութեան մէջ կը վայելէին հաւասար իրաւունքներ, վասնզի ինչպէս կը հասկցուի Գոհարինեանց նահատակութեան պատմութենէն (Ցայսմաւուրք, տպ. Կ. Պոլիս, 1730, էջ 672 և տպ. 1834 Բ. հտ. 48) չորս եղբայրները զինուոր էին բանակին մէջ ուր իրենց հետ կը գտնուէին նաեւ շատ մը ուրիշ քրիստոնեաներ, ինչ որ որոշ ապացոյց է թէ քրիստոնեայք երկրին մէջ չէին նկատուած ստրուկ ու անարգուած տարր մը, այլ կը վայելէին որոշ չափով և ժամանակին ըմբռնումներով արտօնելի բոլոր առաւելութիւնները և ազատութիւնները, մանաւանդ տնտեսական ու կրօնական մարզերու մէջ։ Ուրեմն անվարան կրնանք հաստատել թէ տնտեսական և կրօնական ազատութիւններով Դանիշմանդները և Սիւլէյման և իր յաջորդները ապահովել կրցած էին քրիստոնէից համակրութիւնը։ Ասիկա շատ զօրաւոր պատճառ մըն էր որ երկրին բնակիչները ոչ միայն զայն լքանելով օտար երկիրներ չերթային այլ նոր գաղթականներ հոն հաստատուէին հետզհետէ, ինչ որ պատահած է իրապէս։

Քրիստոնեայ բնակչութեան դէպի Մուհամմէտ Կիւմիւշթէկին ցոյց տուած համակրութեան մէկ արգասիքն էր Մալաթիոյ գրաւումը որ այնքան հեշտ կերպով մը կատարեց Դանիշմանդը։

Մալաթիացիք երբ Դանիշմանդ քաղաքին վրայ եկաւ 1102ին ուրախութեամբ բացին դուռները անոր առջեւ, վասնզի Գաբրիէլ Մալաթիոյ տէրը «խստագոյնս նեղէր զքաղաքն քան զառաջինսն» (Միխայէլ Ասորի, 406. Վարդան, 148. Մատթէոս Ուռհայեցի, 333–335) կրօնական պատճառներով ապահովաբար, թէեւ որոշապէս ըսուած չըլլայ։

Մուհամմէտ Կիւմիւշթէկին Մալաթիան այսպէս դիւրաւ գրաւելէն յետոյ «արար դիւրութիւն եւ շինութիւն... եւ խնամ արկ ի վերայ նոցա տալով նոցա հաց եւ անասունս եւ **ազատութիւն**, եւ շինեցան» (Մէխ. Ասորի, 406)։

Այս ճիշդ ու հեռատես քաղաքականութիւնը սակայն իր յաջորդները չկրցան պահել։

Մէլիք Մուհամմէտ (✝1143) զոր Միխայէլ Ասորի և Մատթէոս Ուռհայեցի Մահմուտ անունով կը ճանչնան, ինչպէս առիթ ունեցայ ըսելու, մոլեռանդ իսլամ մը կը յայտնուի «ատեցող քրիստոնէից» «օրինօքն Տաճկաց» ապրող (Միխ. Ասորի, 414), որ կը քանդէ բազում եկեղեցիներ Կեսարիոյ մէջ (Նոյն, 414) և վանքեր՝ Մարաշի և Քեսունի շրջանին մէջ երբ Մարաշի վրայ կ՚արշաւէ։ Մասնաւորապէս կ՚այրէ Կարմիր վանքն «զսուրբն աղօթից, զխորհուրդս միանձնաց, զնշանս մանրեալ տէրունական փայտից եւ քարանց, զերի վարեալ, եւ զերկաթեղէնս եւ զպղնձեղէնս յերկիր կործանեալ, զսեղանսն սրբութեան հացի փշեալ, եւ զդուռն զեղեցկաշինս յօրինուածոյ եւ զայլն ընդ ինքն բարձեալ տանելով յաշխարհն իւրեանց ի սեւ հարճից եւ ռամկաց» (Ժամն. Մատթ. Ուռհայեցի, 463)։

Թուցէ բռնի իսլամացման փորձեր ալ ըրած ըլլայ թէեւ պէտք է ըսել թէ որոշապէս այս տեսակ յիշատակութիւն մը չունինք, հաւաստելու համար թէ շատերը ստիպեցին մահմէտական կրօնքը ընդգրկելու, ինչպէս ըրած է Zimmerer, ընդհանուր կերպով բոլոր Սելճուկներուն վերագրելով այս տեսակ արարք մը, բոլորովին անտեղի կերպով, վասնզի պատմութիւնը չ՚արդարացներ իր խօսքերը։

Ասիկա սակայն ըսել չէ թէ չեն պատահած մոլեռանդական արարքներ բովանդակ պետութեան մէջ։

Ընդհակառակը փաստեր կան հաստատող թէ խուժանային արարքներ յանուն իսլամութեան գործուած են, ըստ մահմետական օրէնքին որ մահուան կը դատապարտէ իսլամութենէ հրաժողը բայց ոչ իսլամութիւնը չընդունողը (Ազգապատում, 1396)։

Այսպէս կը յիշատակուի թէ 1156 Յունուար 28ին(1) նահատակ-

(1) Այս թուականը առինք համաձայն Օրմանեանի (Ազգապատում, 1397) և Գարեգին եպ. Սրուանձտեանի (Թորոս Աղբար Ա. էջ 178) և Յ. Մանանդեանի և Հ. Աճառեանի (Հայոց նոր վկաները, 1903, 9)։ Օրմանեան մանրամասն կը պատճառաբանէ և կը ճշդէ։ Զամիչեան և Յովհ. եպ. Սեբաստացի (Դիւան Հայոց Պատմ. Ժ. 386) 1136ին և Ցայսմաւուրք (Կ. Պոլիս, 1834, Բ. հտ. 48 և Ղեւոնդ վրդ. Փիրղալէմեան ժամանա-

ուած են Գոհարինեան չորս եղբայրները՝ որդիքը Սեբաստացի Դաւիթ անուն Հայ իշխանի մը որ իսլամացած էր իր անդրանիկ՝ Արեւ անուն զաւկին հետ, մինչ կինը և չորս զաւակները՝ Ռատիոս, Գոհարինէ, Տնկիկ և Ծամիտէս(1) ուզած էին քրիստոնեայ մնալ, մինչ իրենց հետ իսլամացած կը համարուէին։

Տեղւոյն ամիրայն Ալիբաս(2) երբ զանոնք ձերբակալեց իրենց անդրանիկ իսլամացած եղբայրը՝ յայտարարեց թէ անոնք իսլամ էին և ազատեց, սակայն անոնք կրկին քրիստոնեայ մնացին։ Քիչ յետոյ մատնուեցան և նահատակուեցան(3), իբր իսլամութենէ հրաժարողներ։ Հաւանօրէն նոյն պատճառաբանութեամբ(4) իր հօրը Գոհարինէի նահատակութենէն հինգ ամիս յետոյ՝ 1156 Յունիս 22ին(5) նահատակ-

---

կագրութիւն, Դիւան Հայոց Պատմութեան, Ժ. 490) 1075ին կը նշանակեն։ Աւելորդ է երկար բացատրել թէ Օրմանեանի փաստարկութիւնը կատարելապէս արդարացի է և իր ճշդած թուականը ճշդագոյնը կը թուի։

(1) Այս անունները առնել նախընտրեցի այն ուղղագրութեամբ որ իրենց գերեզմանին տապանաքարին վրայ գտնուած է։ Օրմանեան ըստ Յայսմաւուրքներու (տպ. Կ. Պոլիս, 1730 և 1834) Ռատիոսը՝ կը կոչէ նաև Ռատիկոս, Գոհարինէն՝ կը ճանչնայ Գոհարինոս կամ Գոհարմելիք անունով, և Տնկիկը՝ Տուքիկոս կամ Տունկիոս և Ծամիտէսը՝ նաև Ծամիդոս անունով (տես Ազգապատում, 1396)։

(2) Ալի Բուսանա ձեւով ալ յիշուած է (Տաշեան, Մայր Ցուցակ, 43)։ Հաւանօրէն Եաղուպ Ասլանը պիտի ըլլայ յաջորդը Մուհամմէտ Իբն Կիւմիւշթէկինի։ Յովհաննէս եպ. Սեբաստացի (Դիւան Ժ. 386) «որդի թոռանն Դանիշմանայ» կը ներկայացնէ զայն։

(3) Օրմանեան իր առ ձեռն ունեցած աղբիւրներուն վրայ հիմնուած կը հաւաստէ թէ անոնք թաղուած են Մարգճակ անուն տեղը՝ Քառակուսի կոչուած ճամբուն մօտերը (Ազգապատում, 1397), մինչ 1871ին ասոնց գերեզմանը գտնուած է Սեբաստիոյ Ս. Հրեշտակապետ վանքին պարիսպին մօտ խաչ բլուրի գերեզմանատան մէջ։ Իրենց ոսկորները արկղաձև չարուածքի մը մէջ զետեղուած էին և վրան թզաչափ մեծութեամբ սպիտակ քար մը իբր խուփ դրուած էր։ Սրուանձտեանց անձամբ ընդօրինակած է քարին երկու երեսներուն արձանագրութիւնները։ Ա. երեսին վրայ գրուած էր «Այս նահատակք որ կատարեցան սրով վասն Քրիստոսի. Ռատիոս եւ Գոհարինէ, Տնկիկ եւ Ծամիտէս», Բ. երեսին վրայ՝ «Եւ եդան յայս տեղւոջ ի ձեռն Սուրբ վարդապետի Բարսղի, Թուա. ՈԼԶ» (=1187) (Թորոս Աղբար, Ա. 182–183)։

(4) Յայսմաւուրքներ կ'ըսեն թէ ամբաստանուած էր թէ «անարգէ եւ թշնամանէ» իշխանը, որ «զհայր նորա եւ զազգականսն» սպանած էր։ Սակայն աւելի հաւանական է իբր իսլամի զաւակ նկատուիլը, ինչպէս իրեն մզկիթ մտնելու համար եղած բռնադատութիւնն ալ կը յայտնէ (Ազգապատում, 1397)։

(5) Տես Հայոց նոր վկաները, (9), Յայսմաւուրք Յուլիս 7ին կը դնէ։ Փիրղալէմեան (Դիւան Ժ. 491) 1150 և Յովհաննէս եպ. Սեբաստացի, (Նոյն, 386). 1149 և 1155 թուականները կը դնէ հաւասարապէս։



ուած է նաև Թէոդորոս աբեղայ, որ թաղուած է Սեբաստիոյ Ս. Նշան վանքը(1)։

Բայց ասոնք երբեք թոյլ չեն տար նոյնիսկ Ալիբասի համար գրելու թէ «նահատակեաց զբազումս յազգէն Հայոց» ինչպէս ըրած է Յովհաննէս եպ. Սեբաստացի (Դիւան Հայոց Պատմութեան, Ժ. հտ. 386) վասնզի ինչպէս տեսնուեցաւ իսլամական օրէնքին տակ իյնող մի քանի մասնաւոր դէպքեր են պատահածները, որոնցմէ դուրս ինքն ալ բան մը չի գիտեր։

Մուհամմէտ Իբն Կիւմիւշթէկինի հակաքրիստոնեայ արարքները, ինչպէս նաև իրմէն յետոյ պատահած այս մասնաւոր դէպքերը՝ արդիւնք իսլամական մոլեռանդութեան՝ կ'երեւի թէ իրենց յոռի ազդեցութիւնը ունեցած են Դանիշմանդեանց տիրապետութեան ենթարկուած երկիրներուն վրայ, որոնցմէ կարեւոր թիւով քրիստոնեաներ պէտք է գաղթած ըլլան — ինչպէս կ'ենթադրեմ — դէպի աւելի թոյլատու երկիրներ, առաւելապէս Ռումի Սելճուկներու երկիրը, որուն հիմնադիրին Սիւլէյման Իբն Գութուլմիշի ընդգրկած քաղաքականութիւնը իր յաջորդներուն կողմէ չէր լքուած, իրենց տիրապետած երկիրներու ստուար թուով քրիստոնեաները սիրաշահելու համար։ Ասով միայն կրնան մեկնուիլ այն ջանքերը որ Մուհամմէտ Իբն Կիւմիւշթէկինի (1136–1143) անմիջական յաջորդը և որդին Եաղի Պասան կամ Եաղուպ Ասլան (1143–1165) կ'ընէ իր երկիրին մէջ քրիստոնեաներու թիւը շատցնելու համար։

Գրիգոր Երէց՝ Ուռհայեցիին շարունակողը (518) կը վկայէ — ինչպէս տեսնուեցաւ — թէ անիկա Լիկանտոնին վրայ կը յարձակի, կը գրաւէ Լարիսա ամրոցը և կը տանի «զքրիստոնեայս յերկիր իւր»։ Նոյնպէս կը պատմուի թէ Դըլըճ Ասլան Բ.ի հետ Ալփիսթանի կռիւները պատերազմելու ատեն «առեալ զերկիրն ամենայն ոգիս իբրեւ եօթանասուն հազար» կը տանի «ոչ-գերութեամբ» (Գր. Երէց, 519) և «ամրացուցեալ զաւարեալսն յերկիրն իւր» կը դառնայ պատերազմը շարունակելու։ Եաղուպ Ասլան երբ հաշտութիւն կը խնդրէ, հակառակորդը կ'ընդունի «ոչ դարձուցանելով զաւարեալ քրիստոնեայսն» (Գր. Երէց, 520)։

Նշանակելի է «ոչ-գերութեամբ» բացատրութիւնը որ պատմագիրը կը գործածէ։ Կը նշանակէ թէ այդ 70.000 անձերը որոնք իբր ազատ բնակիչ կը տեղափոխուէին, իր երկրին մէջ կը հաստատուէին, և իբր օգտակար տարր մը վար կը դրուէին, հաշտութենէն ալ յետոյ չդարձնելու համար հաշտութեան իբր նախապայման կը դրուի անոնց ետ չպահանջուիլը։

Ասիկա ինքնին նշան մըն է թէ Եաղուպ Ասլան (1143–1165) իր հօրը սխալը կը սրբագրէր քրիստոնէից, յատկապէս Հայոց թիւը շատցնել աշխատելով իր երկրին մէջ։ Յատկապէս Հայոց ըսինք, վասնզի շրջանակները որոնց մէջ կը կատարուէին այս տեղահանութիւնները, հայաբնակ էին առաւելապէս։ Հետեւաբար կարեւոր թիւ մը կ'աւելնար այս շրջաններու մէջ Հայ բնակչութեան վրայ, պարզապէս անոնց օգտակարութեան համար կատարուելով այս տեղահանութիւնները ո-

---

(1) Իր ոտանաւոր պատմութիւնը, որ վանքին պատին վրայ արձանագրուած էր, դժբախտաբար չէ ընդօրինակած Սրուանձտեանց (Թորոս Աղբար Ա. 178)։

րոնք Եաղուպ Ասլան կը կատարէր երկրին շահուն համար, եթէ ոչ Եաղուպ Ասլան շատ մեծ բարեկամ մը չէր քրիստոնէից, իբր անդամներէն մէկը այն դաշնակցութեան, որ Հալէպի Նուրէտտին Աթաբէկին գլխաւորութեամբ կազմուած էր իսլամ պետութեանց միութեամբ ընդդէմ Սուրիոյ Լատին իշխանութեանց և անոնց դաշնակից Կիլիկիոյ Հայ իշխանութեանց և Եաղուպ Ասլանի հետ իր ունեցած հակառակութեան համար ասոնց միացած Ռումի Սելջուկ Սուլթանին Ասէտտին Գըլըճ Ասլան Բ.ի (1156–1193)։

Յաջորդ պատերազմները ընթացքին հաւանօրէն այս տեղահանութիւնները շարունակուած են, և քրիստոնեայ բնակիչները իբր ցանկալի և շահաբեր որսեր իրարու ձեռքէ յափշտակուած են զարմանալի մտայնութեամբ մը և ամէն մէկ Ամիրա, իր շրջանակին մէջ անոնց բնակութիւնը օգտակար նկատած է։ Այսպէս «Խարասլան տէրն Խարբերդոյ առնէր բազում ընդունելութիւն փախստականացն ի գաւառէն Մելտենոյ» (Միխ. Ասորի, 444), մինչ միւս կողմէն իր երկրէն Եաղուպ Ասլան կը վերցնէր 100.000 անձեր և երկու եպիսկոպոսներ (Միխ. Ասորի, 448) մասնաւորապէս Ջմշկածագի շրջանակէն և կը փոխադրէ իր երկիրները։ Այս՝ երկու գերի տարուած եպիսկոպոսները, Իգնատիոս և Դիոնէսիոս որոնք «յետոյ զերծան կենդանի» (Միխ. Ասորի, 448) որոշ չէ թէ Հա՞յ էին թէ Ասորի։ Ասորի պատմագիրը այս պարագան չէ ճշդած։

Սակայն երկրին անապահով և խռովեալ վիճակը շուտով քրիստոնէից անդորրութիւնը և ապահովութիւնը խանգարեց, մանաւանդ երբ Դանիշմանդի իշխանութիւնը Եաղուպ Ասլանի մահէն յետոյ երկուքի բաժնուեցաւ և երկրին թէ՛ ներքին այս երկպառակ վիճակին բերմամբ և թէ՛ արտաքին յարձակումներու հետեւանօք վերջ գտաւ Դանիշմանդեանց իշխանութիւնը. մասնաւորապէս Հալէպի Սուլթանին Նուրէտտինի մահէն յետոյ երբ «բազում գործակալք յարեան ի վերայ իրերաց եւ կոտորեցին զմիմեանս եւ եղեւ յոյժ վնաս եւ պակասութիւն քրիստոնէից վասն շփոթոյ իրացն այնոցիկ» (Միխայէլ Ասորի, 468)։

Ինչ որ ալ եղած ըլլայ Հայերու կրած տառապանքը այս շրջանակին մէջ որոշ էր որ անոնց թիւն այնքան մեծ էր և այնքան շատ որ կարելի չէր որ անմիջապէս Հայերէն դատարկանային այս շրջանները։ Մանաւանդ որ հազիւ տասը տարիներ կը տեւէր այս խռովայոյզ վիճակը և Սելջուկ Ռումի կայսրութիւնը կը տիրապետէր Արգէոս լերան շուրջ բոլոր երկիրներուն և հոն կը հաստատէր ամուր կազմակերպուած կառավարութիւն մը, որ քրիստոնեայ զանգուածներուն համար կը բանար բարօրութեան և հանգստութեան շրջան մը և հարաւային Կապադովկիոյ այս շրջանակին բնակիչներուն միջոց կ'ընծայէր նուիրուելու արուեստներու և իրենց համար ապահովելու բարեկեցութիւն մը, տնտեսական առաւելութիւններ, հաստատուն բնակչութիւն և նոյնիսկ հիմնել համայնքային կազմակերպութիւն, եկեղեցական վարչութիւն և կառուցանել կամ ստանալ կրօնական հաստատութիւններ, ինչպէս պիտի տեսնուի յաջորդ էջերուն մէջ։



ԺԲ.

# ԱՐԳԷՈՍԻ ՇՐՋԱՆԱԿԸ ԻԿՈՆԻՈՅ ՍԵԼՋՈՒԿ ՌՈՒՄԻ ՍՈՒԼԹԱՆՆԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**( 1169 — 1300 )**

Կեսարիա և իր շրջակայ հողերը 1169էն 1175 վերջնապէս կը կըցուէին Սելջուկ Ռումի Սուլթանութեան որուն մայրաքաղաքն էր Իկոնիոն (= Գոնիա)։ Այս գրաւումը կը կատարուէր ճիշդ այն շրջանին ուր այս Թուրք հարստութիւնը, հասած էր իր փառքին կատարը՝ Գըլըճ Ասլան Բ.ի(1) (1156–1193) ժամանակ, երբ անիկա Կեսարիայէն զատ իր տիրապետութեան ենթարկած էր Սեբաստիան և Մալաթիան և վերջ տուած Կապադովկիոյ տիրող իրեն մրցակից Դանիշմանդեան տան իշխանութեան, ու կազմած էր Փոքր Ասիոյ սիրտին վրայ Կարինէն մինչև Ցոնիական և Սեւ Ծովէն մինչև Միջերկրական տարածուող ընդարձակ կայսրութիւն մը։

Գըլըճ Ասլան Բ. որ այս կայսրութիւնը գրեթէ վերակազմած էր, սխալ մտածութեամբ մը— թերեւս արդիւնք ժամանակին՝ ուր աւատականութիւնը տիրող վարչաձեւն էր— իր իշխանութիւնը կը բաժնէ իր տասը(2) զաւակներուն մէջ և այսպէս կը քայքայէ իր իսկ ամրապընդած կայսրութիւնը զայն մասերու բաժնելով։

Այսպէս իր զաւակներէն իւրաքանչիւրը հաստատեց քաղաքի մը մէջ որ իր շրջականերով կազմեց անկախ իշխանութիւն մը։

Այսպէս տուաւ(3) (տես Պատմութիւն Սեբաստիոյ, 149):

1.— Թօգատը՝ Ռուքնէտտին Սիւլէյմանի
2.— Իկոնիոնը՝ Կայաթէտտին— Կայ Խոսրովի
3.— Անկիւրիան՝ Մուհիէտտինի
4.— Մալաթիան՝ Միւէզէտտին Քայսարշահի

(1) Գըլըճ Ասլան Բ. չորրորդ յաջորդն էր պետութեան հիմնադիրին՝ Սիւլէյմանի որուն որդին Գըլըճ Ասլան Իբն Սիւլէյման, Պարկիարուխի արտօնութեամբ իր հօրը գահուն տիրացաւ և գահակալեց 1092էն 1107։ Իրեն յաջորդեց իր երիցագոյն որդին Մելիքշահ (կոչուած Սաիսան) (1107–1116) որ սպանուեցաւ մատնութեամբ և իրեն յաջորդեց իր եղբայրը՝ Մասուտ Ա. (1116–1153) և ասոր իր որդին՝ Ասէտտին Գըլըճ Ասլան Բ. (1116-1193), այն որ գրաւեց Կեսարիան։

(2) Միխայէլ Ասորի (500) զաւակներուն թիւը 12 կը նշանակէ։

(3) Հետագայ բաժանումներու մասին շատ վճռական պէտք չէ ըլլալ, զանազան ուրիշ ձեւերով ալ ներկայացուած է։ Ասոնք փոխադարձ մրցակցութիւններով իրարու ձեռքէ ալ հողեր յափշտակած են, և յաճախ մէկուն սեփական երկիրները միւսին հողերուն կցուած են։

5.— *Էլպօսթանը՝ (Ալպիսթան) Մոկայաթէտտին Թօղրուլի*
6.— *Կեսարիան՝ Նուրէտտին Մահմուտի*(1)
7.— *Սեբաստիան՝ Քութպէտտին Մալէք Սալէհի*
8.— *Նիկսարը՝ Նասրէտտին Պարկեարուխի*
9.— *Ամասիան՝ Սանճարշահի*
10.— *Հերակլէան (Էրէկլին)՝ Շէհաէտտինի*

*Ասոնք յաճախ կ'արհամարհէին իրենց հայրը և ինքնագլուխ կը գործէին ինչպէս պետութեան հիմնադիր Սիւլէյման Իբն Գուրթուլմիշ ըրած էր, իրենց սեփական հաշւոյն նուաճումներ ընելով կ'ուզէին իրենց սահմանները ընդարձակել, երբեմն դրացի օտար իշխանութիւններու և երբեմն ալ իրարու վրայ յարձակելով։*

*Մեզի հասած յիշատակագիրներու և պատմագիրներու (ինչպէս* Արքունի պատմիչը *որ Ալիշան օգտագործած է,* Սմբատ Գունդստապլ, 113. Վահրամ, 213. Վարդան, 133. Կիրակոս, 74 *և* Արքայական Ճաշոցի Յիշատակարան, *ձեռ. Էջմիածինի Մատենադարանին թ.* 892. *տես* Արարատ, 1870, 355 *կամ Սամուէլ Անեցի, յաւելուած,* 219-220 *և վերջապէս օտար պատմիչ մը՝* Միխայէլ Ասորի, 501-502) *ինչ ինչ տողերէն կը հասկցուի թէ Կիլիկիոյ Հայկական իշխանութեան սահմանակից Կեսարիոյ, Ալպիսթանի և Էրէկլիի իշխողները, մեր Լեւոն իշխանին* (1185-1219) *— որ թագաւոր օծուեցաւ* (1199 *Յունուար* 6) *— հողերուն վրայ յարձակած են և այս պատճառով Լեւոն ստիպուած է իր երկիրը պաշտպանել և նոյնիսկ Տաւրոսեան շղթան անցնելով նուաճումներ կատարել դէպի Արգէոսի շրջանները։*



ԴՐԱՄ
ԱՍԷՏՏԻՆ ԳԸԼԸՃ ԱՍԼԱՆ Բ.Ի
(1156 — 1193)

*Այսպէս արքունի պատմիչը կ'ըսէ թէ Լեւոն* «խոհեմ իշխանօքն եւ քաջամարտիկ զինուորօք՝ քաջապէս մղէր զհոյլս բռնաւորացն եւ զորդիս Խլին Առսլան Սուլտանին՝ որք տիրեցին տան Հոռոմոց՝ նեղեալ զնոսա յոյժ, առնլով ի նոցանէ բերդորայս եւ զերելով զերկիր նոցա աւերմամբ: Եւ արիազոյն քաջութեամբ ապառազինեալ կայր ի մէջ բռնաւորաց՝ իբր զախոյեան անպարտելի» (*տես* Սիսուան, 443): (*Տես նաև Սմբատ Գունդստապլ*, 113)։

*Միխայէլ Ասորի* (501–502), *կը հաստատէ թէ* «արիազոյն Լեւոն տիրեաց եւթանասուն եւ երկու բերդի(2), էր զոր նախնիքն իւր կալեալ էին եւ էր զոր ինքն էառ ի Յունաց եւ ի **Թուրքաց**(1): Եւ անկաւ ահ ու երկիւղ նորա ի վերայ ամենայն ազգաց սահմանակցաց աշխարհին իւրոյ: Եւ ապաւինեցան ի նա որդիքն Սուլտանայ, եւ եկն առ նա ի հնազանդութիւն Մելիք Ապլսաթին (Ալպիսթան)(2) որ տիրէր վերագոյն աշխարհացն եւ ել Մեծն Լեւոն եւ էառ բերդ մի մերձ Կեսարիոյ եւ ետ նմա»:

*Դժբախտաբար երեք պատմիչներն ալ, որոնք ժամանակակիցներ են, և Կիրակոս Գանձակեցի* (74) *որ ինքն ալ արձագանգն եղած է Լեւոնի յաղթութիւններուն, չեն ըսած թէ ո՞ր տեղերուն տիրած է։*

*Միայն Թագաւորական Ճաշոցին յիշատակարանը կ'ըսէ թէ* «տիրեաց եւ կողմանցն Սաւրիոյ(3) մինչեւ յԻտալիա(4): Էառ զԱռակլիա(5) եւ զ**Կեսարիա** եւ ընդ գանձուց փոխանակեաց»:

*Արքունի պատմիչին այս տեղեկութիւնները կը հաստատէ ուրիշ արքունի պատմագիր մը Վահրամ Րաբունի, որ Լեւոնի յանձնարարութեամբ իսկ Ռուբինեան տոհմին ոտանաւոր պատմութիւնը գիրի առած է։ Անիկա կ'ըսէ* (*տես* 213)։

« . . . Լեւոն՝ քաջացեալ
Եւ իմաստիւք՝ առաւելեալ
Զիշխանութիւնն՝ ընդարձակեալ,
Եւ գաւառաց՝ բազմաց տիրեալ:
. . . . . . . . . . . .
Ի յայսմանէ՝ յոյժ զօրացեալ
Մեծըն Լեւոն՝ եւ քաջացեալ,
Որ զՏաճիկսն հալածեալ
Եւ զԹուրքաց՝ ազգըն վանեալ:
ԶԻսաւրիոյ աշխարհն առեալ,
ՅԱտալիա՝ մեծըն հասեալ
ԶԱռակլիա՝ եղեւ կալեալ,
Եւ ընդ գանձուց՝ փոխանակեալ:
ԶԿեսարիա՝ զօրօք պատեալ,
Եւ ի յառնուլըն մերձ ածեալ.
Ապա ոսկի՝ բազում առեալ,
Եւ ընդ Սուլտանն երդումն եղեալ:
Ամրոց բազում՝ եւ դղեակ շինեալ
Եւ զԿիլիկեա շրջապնդեալ»:

---

(1) *Խալիլ Էտհէմ* (Գայսէրի Շէհրի *յառաջաբան*) *կ'ըսէ թէ իսլամական հնագոյն յիշատակարանը որ Կեսարիոյ մէջ գտնուած է արձանագրութիւն մըն է վերաբերող Նուրէտտին Սուլթան Շահի, Հիճրիթի* 589 *թուականով, որ կը համապատասխանէ Քրիստոսի* 1193 *թուականին։*

(2) *Վարդան՝ հաւանական սրբագրիչը Միխայէլ Ասորիի պատմութեան թարգմանութեան,* (*տես* Ցուցակ ձեռագրաց Թիֆլիսի Ներսէսեան վարժարանին, 54-58), *ինքն ալ հետեւողութեամբ անոր կ'ըսէ* «տիրեաց եօթանասուն եւ երկու բերդից» (133)։

(1) *Վարդան «զօրացաւ ի վերայ Յունաց և* Պարսից» *ըսած է* (133)։ *Մեր պատմագիրները՝ Սելճուկները պարսիկ կը կոչէին։*

(2) *Վարդան* (133) «արար ընդ հարկաւ զԿլին Ասլան Սուլտանն Միջերկրեայ» *կը գրէ. ինչ որ հաւանական չէ։ Ասորի պատրիարքին ըսածը աւելի խելքի մօտ կ'երեւի, նկատի առնելով որ Ալպիսթան սահմանակից էր Կիլիկիոյ։ Մանաւանդ յետոյ պիտի տեսնուի որ Ալպիսթանի տէրը Մոկայաթէտտին Թօղրուլ բարեկամ և զինակից եղած է Լեւոնի։ Վերը մէջ բերուած հատուածին* «զորդիս Խլին Ասլանի» *բացատրութիւնն ալ համաձայնութիւն մը կը հաստատէ Կիլիկիոյ պատմիչին ու Սմբատ և Ասորի պատմագիրներուն միջև։*

(3) *Սաւրիան պէտք է կարդալ Իսաւրիա։*

(4) *Ատալիա կարդալ։*

(5) *Էրէկլի կամ Հերակլիա։*

Ուրեմն Վահրամ ալ կը հաստատէ թէ Իսաւրիա, Ատալիա և Առակլիա Լեւոնէն գրաւուած են և Կեսարիան՝ պաշարուած(1)։ Շատ պարզ է հետեւցնել թէ Լեւոն մինչև այս երկիրները հասնելու համար այդ տարածութիւններու վրայ գտնուած ուրիշ քաղաքներն ալ պէտք է գրաւած ըլլայ, ինչպէս Լառանտան (=Գարաման) որ Սմբատ Գունդստապլ (117) անցողակի կը յիշէ։ Իսկ մասնաւոր կարեւորութեամբ մը յիշատակուած է Նաև արքունի պատմիչէն Պռականա(2) բերդին գրաւումը որ կատարուած է 1188ին։ Սիր Պաղտին(3), Հայոց Գունդստապլը այս բերդին վրայ կը յարձակի սակայն չի յաջողիր գրաւել և կռիւին մէջ կը մեռնի։ «Ձկնի երկուց ամաց էառ զօրութեամբ զՊռականա՝ Լեւոն, եւ եսպան զբերդաւագն զՏիպլի ամիրա՝ որ սպանեալ էր զՊաղտինն, եւ ոգի երկու հարիւր» (Արքունի պատմիչ, Սիսուան, 331)։ Միայն անորոշ կը մնայ թէ Լեւոնի գրաւած բերդը Սելջուկեան Ռումի կայսրութեան սեփական էր թէ ուրիշ Թուրք ամիրայի մը որ այդ կողմերը բռնացած էր։



ԼԵՒՈՆ Ա. ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐ
(1185 — 1219)

Լեւոնի այս յաջողութիւնները զինքը տէր կը դարձնէին «Լիով եկուց Կիլիկէից յերամբք եւ դասօք, քաղաքօք եւ ամրական դղեկօք՝ եւ ա՛ռ քաջութեամբ իւրով եւ զհասարակն Սուրացւոց եւ մասունս ոչ սակաւս **յերկրորդ Կապադովկացւոց, յԵրրորդ Հայոց, զոր ոմանք Առաջին անուանեն Հայք**. գրաւեաց ընդ իւրով իշխանութեամբ եւ յԱսորեստանեաց գաւառաց: Եւ ցուցաւ իմաստնագոյն եւ ճոխ իշխանութեամբ զի ոչ ոք տիրէր ի վերայ նորա եւ համբաւ արիութեան նորա թուլացուցանէր զզիլս անօրինաց եւ պարզէր զերեսս քրիստոնէից եւ յնոյր խնդութեամբ եւ ուրախութեամբ, վասն որոյ փութային պատուել զնա թագիւ (Միխայէլ Ասորի, 503–504)։

Ինչպէս այս տողերէն կը հասկցուի, Լեւոն Տաւրոս լեռնաշղթային հիւսիսային կողմը, Կիլիկիայէն դուրս, մինչեւ Արգէոսի շրջանները իրեն հնազանդեցուցած էր և իր քաջութիւններր՝ պատճառ եղած էին որ մասնաւորապէս Յոյները փութային զինքն ճանչնալ թագաւոր «զի բերեւս հնար լիցի նովաւ յաղթել Թուրքացն» (Միխայէլ Ասորի, 504)։

Լեւոն իր այս յաջողութիւնները իրապէս կը պարտէր Իկոնիոյ Սուլտանին Գըլըճ Ասլան Բ.ի (1156-1193) այն անխորհուրդ կարգադրութեան որով պետութիւնը իր զաւակներուն մէջ բաժնած էր, և անոր ոյժը ջլատած։

Նոյնպէս եթէ Ֆրետերիկ Շիկամօրուս (= Barberousse) (1152–1190) Գերման կայսրը խաչակիրներու բանակով յաջողեցաւ ճեղքել այս երկիրը, և գրաւել նոյնիսկ անոր մայրաքաղաքը, 1189ին, այս յաջողութիւնը կը պարտէր երկրին այս բաժան բաժան վիճակին (De Hammer, Hist. de l'Emp. Ottoman. հտ. Ա.)։

Այս խաչակրութեան ընթացքին կը պատմուի թէ Ֆրետերիկ կայսեր բանակէն մաս մը Անտիտաւրոսի Գագ-Պէլ կիրճէն թափանցած է Արգէոսի Արեւելեան դաշտը և բանակած Ս. Կարապետի վանքին մերձակայ ձորէն — որ այսօր կը կոչուի Ֆրէնկ Տէրէսի — մինչեւ Տէրին տէրէ տարածուող դաշտավայրը (Հ. Ոսկերչեան և Կ. Աբրահամեան, Կեսարիոյ Ս. Կարապետ վանքի բարձրագոյն վարժարանը եւ Տրդատ եպ. Պալեան, Ընդ. Տարեցոյց Ազգային Հիւանդանոցի, 1928 էջ 222)։

Այս գրաւումը, որ աւանդութենէն գիտենք, եթէ ճիշդ է, Փոքր Ասիան ճեղքող վերջին քրիստոնեայ խաչակիրներու բանակը Կեսարիոյ շուրջն ալ երեւցած է, քրիստոնեայ տիրապետութեան վաղանցուկ յոյսերը բերելով, քանի որ Սելջուկ պետութիւնն ալ քայքայուած էր բաժան բաժան ըլլալով։ Սակայն քիչ յետոյ Գըլըճ Ասլան Բ. ըմբռնած ըլլալով իր գործած մեծ սխալը, կը ջանար միացնել պետութիւնը ձեռքին տակ իր անդրանիկ զաւկին Խութպէտտինի, որուն դիրքը զօրացնելու համար կ'ամուսնացնէր զայն հռչակաւոր Եուսուֆ Սալահէտտինի աղջկան հետ։ Բայց չէր կրնար իր նպատակին հասնիլ, վասնզի իր զաւակները իրենց իշխանութենէն հրաժարիլ չէին ուզեր և սաստիկ կը մաքառէին իրարու և իրենց հօրը դէմ (Պատմ. Սեբաստիոյ, 194. Սիսուան, 450)։

Ասոնց մէջ ամէնէն ձեռներէցը և յաջողակը հանդիսացաւ կրտսերագոյնը՝ Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1193) որ գրաւեց մայրաքաղաքը, և հօրը իշխանութիւնը յափշտակեց։

Սակայն միայն Լիկաոնիան և Պամփիլիան ունէր իր ձեռքը։ Իսկ Թոքատի տէրը՝ Ռուքնէտտին Սեւ ծովու եզերքը քանի մը ամրոցներ գրաւած էր և Խութպէտտին Մալեհ Սալէհ՝ անդրանիկը թէեւ վանուած էր մայրաքաղաքէն սակայն տակաւին իր իշխանութեան տակ ունէր Կեսարիան, Մալաթիան, Սեբաստիան և Կողոնիան։ Մասուտ (որ նոր կը յիշուի) գրաւած էր Ամասիան, Անկիւրիան և Դորիլիան (Էսկի-Շէհիր) և ուրիշ քաղաքներ Պոնտոսի մէջ (Պատմ. Սեբ. 195)։

Երբ Գըլըճ Ասլան մեռաւ (1193) ամէնքն ալ ինքզինքնին Սուլթան հռչակեցին և իրարու՝ ինչպէս նաեւ միւս եղբայրներուն դէմ, որո՛նք ուրիշ գաւառներու կը տիրէին, կռուեցան։ Ամէնէն առաջ իրարու դէմ ելան Խութպէտտին Սեբաստիոյ Սուլթանը և Կեսարիոյ տէրը՝ Նուրէտտին որ իր հողերէն վանուած էր։ Խութպէտտին մեռաւ ճակատամարտին մէջ, սակայն Նուրէտտին չկրցաւ տիրանալ իր հողե-

(1) Միքայէլ Ասորի միայն Կեսարիոյ մօտ բերդ մը գրաւած ըլլալը կը յայտնէ։ Թագաւորական ձաշոցին յիշատակարանը Կեսարիան **գրաւած** ցոյց կու տայ և ապա «ընդ գանձուց» փոխանակեալ։

(2) Պռականայի տեղը չէ կրցած ճշդել Ալիշան, որ կ'ենթադրէ թէ Սելեւկիոյ արեւելեան հիւսիսային լեռնային սահմաններուն մէջ պէտք է ըլլայ և կարեւոր տեղ մը, «չէն մեծ և բերդ հզօր» թերեւս Իսաւրիոյ և Սելեւկիոյ սահմաններուն վրայ, վասնզի Նիկետաս (Վարք Մանուէլ կայսեր. Ա. ա.) զայն Սելեւկիոյ և Յովհ. Կինամոս (Գիրք Պատմութեանց, Բ. ե. և ժա.) Իսաւրեան քաղաք կը ներկայացնեն։ Առաջին անգամ Թուրքերը զայն գրաւած են 1143ին։ 1147ին Յոյներէն կը վերագրաւուի և Հայ Տիգրան անուն իշխանի մը կը տրուի։ Թորոս Բ. առաջին անգամ գրաւած է Պռականան, որ յետոյ դարձեալ Թրքաց անցած էր (Սիսուան, 330)։

(3) Ըստ Ալիշանի (Սիսուան, 444) թերեւս Եւրոպացի։

*րուն վասնզի Թօգատի Սուլթանը՝ Ռուքնէտտին Սիւլէյման* (1193-1204) *ինքն գրաւեց Կեսարիան, ինչպէս նաեւ մեռնողին երկիրը՝ Սեբաստիան և զօրանալով գրաւեց նաեւ Իկոնիան՝ անկէ վանելով Ղայասէտտին Կայ Խոսրովը որուն տուաւ իբր ճորտութիւն՝ Ալպիսթանը։ Սակայն Ղայասէտտին նախ Հալէպ, յետոյ Կիլիկիա և ապա Տրապիզոն և Կ. Պոլիս ապաստանեցաւ։*

*Ռուքնէտտին Սիւլէյման դարձաւ Սուլթան* (1193-1204) *և յաջողեցաւ փրկել Ռումի կայսրութիւնը սպառնացող քայքայումի վտանգէն, սակայն որովհետեւ անհաճոյ եղած էր մահմետական կրօնաւորներու, որոնք զինքը իբր անաստուած կ'ամբաստանէին, սպանուեցաւ։*

*Իր որդին Ասէտտին Գըլըճ Ասլան Գ.* (1204) *շուտով գահընկէց եղաւ* (1205) *Ղայասէտտին Կայ Խոսրով Ա.ի կողմէ, որ Կ. Պոլիսէն եկաւ։*

*Ճիշդ այս օրերուն* (1205) *որ Կայ Խոսրով վերստին գահ կը բարձրանար ըստ Սմբատ Գունդստապլի* (115) «գնաց Լեւոն թագաւորն ի վերայ Ապլասթին եւ չկարաց առնուլ»: *Ալիշան* (Սիսուան, 450) *անծանօթ աղբիւրի մը վրայ հիմնուած կ'ըսէ թէ Լեւոն* «բաղդիւ կամ ճարտարութեամբ իւրով» *ստացած էր Ղայասէտտինի կալուածներէն և բերդերէն մաս մը — որոնք կը գտնուէին Ալպիսթանի երկիրին մէջ — երբ անիկա իր քով ապաստանած էր։ Հաւանական է ուրեմն ենթադրել թէ Ղայասէտտին երբ Ռուքնէտտինէն հալածուած ապաստանած էր Լեւոնի քով այս տեսակ նուիրատուութիւն մը ըրած էր, սակայն իր դարձին յանկարծ վերագրաւած էր և Լեւոն այս առթիւ էր որ Ալպիսթանի վրայ արշաւանք մը ըրած և չէր յաջողած։*



ԴՐԱՄ

ՂԱՅԱՍԷՏՏԻՆ ԿԱՅ ԽՈՍՐՈՎ Ա.Ի

( 1204 — 1210 )

*Այս թշնամութիւնը ունէր հաւանօրէն իրեն ուրիշ պատճառներ ալ։ Կայ Խոսրով Ա. գահ կը վերադառնար ճիշդ այն ատեն երբ Լատին կայսրութիւն մը կը հաստատուէր Կ. Պոլսոյ մէջ* (1204)*։ Հայերը՝ Լեւոնի ընդգրկած քաղաքականութեան բերմամբ բարեկամ էին Լատիններուն մինչ Թուրքերը՝ թշնամի։ Ուստի Արեւելքի մէջ գոյութիւն ունեցող պետութիւնները երկու իրարու հակառակորդ խումբերու բաժնուեցան։*

*Թուրքերը և Կ. Պոլսոյ գրաւումէն յետոյ իր կեդրոնը Նիկիա հաստատած յունական կայսրութիւնը, իրարու հետ զինակցեցան* (1204) *մաքառելու համար Լատիններուն և անոնց պաշտպաններուն դէմ* (Գելցեր, 398) *որոնցմէ գլխաւորներն էին Հայոց թագաւորը՝ Լեւոն Բ. և Տրապիզոնի կայսրը՝ Դաւիթ Կոմնէն։*

*Այս պատճառով ապահովաբար Կայ Խոսրով թշնամացաւ Հայոց հետ, ինչպէս նաեւ բոլոր Լատիններու համակիր և դաշնակից իշխանութիւններու հետ։ Ուստի* 1207*ին գրաւեց Ատալիա կարեւոր նաւահանգիստը իտալացի Ալտոպրանտինիէն, և* 1208*ին Կիլիկիոյ ամէնէն կարեւոր ամրոցներէն Բերդուսը՝ Հայոց Լեւոն թագաւորէն և գերի առաւ անոր տէրը Գրիգորը* (Սամուէլ Անեցի, 146) *որ ըստ Հեթումի* (81) *որդին էր Լեւոնի, բայց աւելի առաջ չեկաւ* (Սիսուան, 514)։



*Լեւոն յաջորդ տարին* (1209 *Օգոստոս*)(1) *օգնութեամբ* Հիւրընկալ Ասպետներու (*ըստ Ալիշանի Հիւանդանոցի ձիաւորաց*) *որոնց կարգապետն էր Գուարին կամ Կէրէն* de Montaigüe(2), *յաջողութեամբ կը վանէ և չարաչար կը հարուածէ բազմահոյլ բանակը թշնամիներուն։ Այս առթիւ Լեւոն, ի նշան գոհունակութեան և շնորհակալութեան այդ ասպետական կարգին կը շնորհէ* 1210 *Ապրիլին կրկին հաստատագիրով Սելեւկիա բերդաքաղաքը, Նորբերդը և Կամարտիասը իրենց շրջակայ հողերով։ Ասկէ զատ* 1210 *Օգոստոսին կը ծանուցանէր Պապին թէ խոստացած էր նաև տալ անոնց Լարանտա* ( = *Գարաման* ) *քաղաքը զոր մտադիր էր առնել այլազգիներէն կամ թոյլ պիտի տար որ անոնք ինքնին ջանային կորզել* (Epist. Innoc. III. Սիսուան, 514)։

*Ինչպէս կը տեսնուի Լեւոն ջանացած է դէպի հիւսիս, Անդրտաւրոս տարածուած երկիրները գրաւել կամ հոն հաստատել քրիստոնեայ սահմանապահ լատին իշխաններ։ Այս պատճառով շարունակ յարձակումներ գործած և գործել տուած է, և մասնակցած կամ աջակցած է այն յարձակողականին որ Լատինները և Յոյները միասին գործադրած են* 1211*ին Կայ Խոսրով Ա.ի վրայ որ այս պատերազմին մէջ սպանուած է։ Իր յաջորդը Ասէտտին Կայ Քաուս Ա.* (1211–1220) *պարտաւորուեցաւ Նիկիոյ կայսեր զիջիլ ասիական ծովեզերքին մեծ մասը* (*Գելցեր*, 400-401) *և քաշուիլ մինչև Սաքարիա և Մէանդր գետերուն վերին հոսանքները* (*Նոյն*, 402)։ *Յունաց հետ անգամ մը համաձայնելէ յետոյ, Կայ Քաուս* «յաղթող եղեալ քան զհայրն իւր, լինի պատճառ շմօրի ընդ թագաւորն Հայոց Լեւոն» (*Միխայէլ Ասորի*, 511), *որ որքան ատեն որ առողջ և կայտառ էր կ'երեւայ թէ կը յարգուէր իր դրացիներէն վասնզի ինչպէս Սմբատ Գունդստապլ կը բացատրէ Իկոնիոյ Սուլթանը* «ի ծերութեան Լեւոնի որ ցաւոտեալ էր ի նրկրիսէն եւ աւերեալ էր ձեռքն ու ոտքն, կամեցաւ քէն հանել վասն շատ ուժերոյն, զոր արարեալ էր Լեւոն թագաւորն իւրեանց եւ առեալ էր զԱրակլի ( = *Էրէկլի*) եւ զԼառանդա (= Գարաման) եւ Կեսարիոյ սղարիլն՝ զոր ի յառ էած եւ դարձաւ ծախեց իւրեանց»:

*Ուրեմն վրէժխնդրութեան պատերազմն էր որ կը մղէր Ասէտտին Կայ Քաուս Ա.* (1211–1220), *որ* «բազում զօրս ժողովեալ հասանէ ի Կոկիսոն Հայոց եւ պաշարէ զամուր դղեկն որ կոչի Կապան եւ բազում աւուրս մարտուցեալ ոչ կարաց առնուլ զնա» (1217ին) (*Միխայէլ Ասորի*, 511. *համմտ. Սմբատ*, 111. *Վահրամ Րաբունի*, 216. *Սամուէլ Անեցի*, 146. *և Հեթում* (82)։ *Այս յանդուգն արարքը փոխադարձելու համար* «թագաւորն Հայոց Լեւոն զիւրոյ աշխարհին զօրքն գումարէր եւ փութայր ելանել ընդ առաջ նորա, եւ նորին զօրագլուխն պարոն Կոստանդին Գունդստապլն որ էր քեռորդի թագաւորին Լեւոնի, առեալ սակաւ ինչ գունդս ի զօրացն, յառաջ մատուցեալ ի կիրճս լերացն, եւ պատահեալ գնդի միում ի զօրացն Թուրքաց, եւ անկեալ ի վերայ՝ զամենեսեան կոտորեաց, եւ ըմբռնեաց ի նոցանէ արս գլխաւորս՝ որք

---

(1) *Ըստ Ալիշանի* (Սիսուան, 514) *Ասէտտին Կայ Քաուս Ա.ի ատեն, սակայն պէտք է սխալ ըլլայ, վասնզի այս Սուլթանը գահակալած է* 1211*ին։*

(2) *Լեւոնի թուղթին մէջ առ Իննովկենտ Պապ Կարին կոչուած է* (Սիսուան, 54)։

ազդեցին նմա զբուն զայնուս զօրացն Սուլտանին, եւ աղաչէին դառնալ եւ բաւական համարել զյաղթութիւնն զոր արար: Եւ նորա ոչ անսացեալ բանիցն նոցա եւ առաւել եւս յամառեալ եւ քաջալերեալ զզօրսն՝ հանդիպի ծանր զօրու կուռ վառեալ զինու, եւ ի պարտութիւն մատնի գունդստապլն եւ զօրքն որ ընդ իւր(1), եւ ըմբռնեցան իշխանքն եւ պարոնք Կոստանդին Լամբրունցին եւ Կեռսակն (Կեռ Սահակ) եւ այլ մեծամեծ իշխանք(2), թող զօրս կոտորեցան ի նմին տեղւոջ իբրեւ հազար այր պատերազմող, եւ ըմբռնեալ զնոսա դարձաւ ի Կեսարիա»(3) (Միխայէլ Ասորի, 511-512) *որ կ'երեւայ թէ այն ատեն Սելջուկ Թուրքի կայսրութեան ամէնէն կարեւոր քաղաքներէն մին էր եւ կեդրոն մը՝ եթէ ոչ մայրաքաղաքը։*

«Իսկ թագաւորն Լեւոն իբրեւ լուաւ զկոտորումն զօրացն եւ զըմբռնումն իշխանացն, առեալ զզօրս իւր արշաւէր ի միւս կողմն աշխարհին Հոռոմոց(4), եւ բերէր աւար անթիւ եւ կ'ուտէր իբրեւ զաւազ առ ափն ծովու եւ յետ սակաւ աւուրց արարեալ սէր ընդ միմեանս, ետ թագաւորն Հայոց Լեւոն զբերդն Լուլուայ(5)

(1) Սիսուանի *մէջ* (518) *Ալիշան համաձայնեցնելով զանազան պատմագիրները կը պատմէ թէ Կոստանդին Գունդստապլին հետ էին մեծ իշխան եւ Պայլ՝ Ատան եւ բազում ազատ պարոններ, ի մէջ այլոց Կոստանդին որդի Հեթում-Հեղեայ եւ բանակեցան Շողական լերան վրայ։ Ճակատամարտը տեղի ունեցաւ* Եզտի *կամ* Եէզտի *կոչուած տեղը։ Կոստանդին նախ յաղթեց, սակայն Սիր Ատան չօգնեց, որմէ քաջալերուած թշնամին պաշարեց Կոստանդինի գունդը որ անձնատուր եղաւ։*

(2) *Սմբատ Գունդստապլ ունի անուն մը աւելի (Ազիլ՝ Օքսենց իշխանը)։*

(3) *Մեր պատմիչներուն համաձայն այս յաղթութենէն յետոյ Սուլթանը դարձած է Կապանի պաշարումը խստացնելու, սակայն երբ Լեւոն իր երկիրը արշաւեց Սուլթանը լքեց Կապանի պաշարումը եւ դարձաւ իր երկիրը* (Վահրամ, 517), *գերիներու շատութիւնը տեսնելով գոհունակութեամբ ըսելով թէ «այս ինձ հերիք է» (Սմբատ)։*

(4) *Ըստ Սամուէլ Անեցիի* (146) «այլ կողմն յաշխարհն Հոռոմոց»։

(5) *Սմբատ բացի Լուլվայ բերդէն Լեւոնի կողմէ տրուած է կ'ըսէ նաեւ Խաւերիոյ գետն եւ* «զանառիկ ծագն Լօզատի»(?) (*Ալիշան*, Սիսուան, 521. «Լաւզատի անձաւաբերդը Խաւրիոյ գետահովիտին մէջ» *կ'ըսէ*)։ *Այս տեղերը յետոյ կը թուի թէ վերադարձուած են նորէն Հայոց, վասնզի Կիրակոս պատմիչ* (188) *ժամանակ յետոյ Հեթումի թագաւորութեան շրջանին կը պատմէ թէ անիկա* «առաքեաց զեղբայր իւր Սմբատ զօրավարն առ զանն երեւելի պատարագօք եւ նորա երթեալ խաղաղութեամբ զերկայնութիւն ճանապարհին եւ յոյժ մեծարեալ ի նմանէ, դարձաւ երեւելի փառօք եւ հաւատարիմ հրովարտակօք տուեալ նմա զաւառս բազումս եւ բերդս յոլովս, զոր յառաջ լեալ էր Լեւոնի արքայի եւ զկնի մահուան առ ի նոցունց Ալատին Սուլտանն Հոռոմոց» (188):

*Լուլուայ բերդը ըստ Մելիք Թէվէքէլի* (ՀԱ. 1914, 159-162) *կը գտնուէր այն հինաւուրց գլխաւոր պողոտային վրայ որ Տարսոնէն դէպ ի հիւսիս Կուկլկայ Կապանէն (Քիւլէկ պօղազի) անցնելով եւ Պօզանթիէն սկսեալ Սարոսի ձախ եզերքին գետակիցներէն Չագըրտի հետեւելով եւ ապա դէպ ի արեւմտակողմ շեղելով մինչեւ այժմեան Փորսուգ եւ Պաշալը գիւղերը, դէպ ի հիւսիս կը տանի Բ. Կապադովկիա, որուն մայրաքաղաքն էր Տիանա։ Սուլթանը անիկա առնելով անակնկալ արշաւանքներու վտանգը կ'ուզէր հեռացնել։*



եւ թափեացն իշխանսն(1) որ ըմբռնեալ էին եւ խոստացաւ տալ Հոռոմոց Սուլթանին յամենայն ամի երեք հարիւր այր ի ծառայութիւն եւ հնազանդեցաւ նմա եւ այս լինէր ի ծերութենէ եւ յանկարութենէ մարմնոյն եւ իշխանքն ոչ էին ընդ նմա ուղիղ» (*տես Միխայէլ Ասորի*, 512-513. *համմտ. Սմբատ*, 117-118. *Վահրամ*, 216. *Սամուէլ Անեցի*, 146-147. *Հեթում*, 82-83 *եւ Արքայական ճաշոցի Յիշատակարան*)։

*Սակայն չէ ըսուած թէ Սուլթանին տէրութեան ո՞ր կողմը արշաւած է Լեւոն։ Արքայական ճաշոցին յիշատակարանն է որ կը կատարէ այդ ճշդումը ըսելով թէ* «Լեւոն առեալ զմնացեալ զօրս իւր ապստակեաց աշխարհն Գամրաց եւ բազում ոճիրս գործեաց եւ առեալ զառ եւ զաւար դարձաւ 'ի Կիլիկիայ» (*տես նաեւ Վահրամ*, 217)։

*Գամրաց աշխարհը Կապադովկիան է որուն այս կրկին տիրապետութիւնը առաջինին հետ խառնելով անփոյթ գտնուած են որոշ գրելու մեր պատմիչները։ Սակայն յիշատակագիր մը՝ ըստ Ալիշանի* (Սիսուան, 514) *գրած է թէ այս արշաւանքի միջոցին Կեսարիան գրաւուած է։ Թերեւս հաւատք չընծայէինք այս յիշատագիրին եթէ օտար պատմիչ մը Իպն Պիպի իր պարսկերէն* Սելճուգնամէին *մէջ յիշատակած չըլլար այս պարագան, գրելով թէ Կայ Քաուսի իշխանութեան ատեն, այսինքն* 1211*էն* 1220 *ժամանակամիջոցին եւ ո՛չ թէ Լեւոնի թագադրութենէն* (1199) *առաջ, Էրզրումի Մելիք Միւսէտտին Թուղրիլ Շահ, Լեւոն թագաւորին հետ Կեսարիոյ վրայ եկած են եւ պաշարած։ Կեսարիոյ տէրը Ճէլալէտտին Լեւոն թագաւորին մեծ նուէր մը տալով զայն կը համոզէ քաշուիլ։ Միւսէտտին ալ քաշուեցաւ եւ Ալայէտտին Քէյքաւուս (Կայ Խոսրո՞վ) ալ Էնկիւրի դարձաւ (տես Խալիլ Էտհէմ*, Գայսէրի Շէհրի, 34)։

*Բայց ի վերջոյ որոշ է թէ Լեւոն եւ Ռումի Սուլթանը հաշտուած են եւ Ասէտտին Կայ Քաուս Ա.* (1211-1220) «սէր երդմամբ ետ ընդ արքային Լեւոնի» (Յիշատակագիր, *Սիսուան*, 521) *կամ ինչպէս Վարդան կ'ըսէ*

«Ընդ արքային երդում եղեալ,
Եւ ըզգերեալսըն դարձուցեալ»:

*Սակայն որչափ որ ալ Հայ պատմագիրները չուզեն խոստովանիլ Միխայէլ Ասորիի գրածը, կը մատնանշեն պարտութիւն մը որ Լեւոն կրած է եւ հարկադրուած ճանչնալ Ռումի Սուլթանին գերիշխանութիւնը, յանձն առնելով օգնել զինուորականապէս, բան մը որ գործնականապէս ալ կատարած է, օգնելով զօրքով Կայ Քաւուսի, անոր Ռապան, Թլպաշար, Այնթապ — Հալէպի Սուլթանին երկիրները — կատարած արշաւանքին միջոցին (Միխայէլ Ասորի*, 513-514)։

*Կայ Քաուս Պոնտոսի Յոյն եւ Կիլիկիոյ Հայ լատինասէր իշխանութիւնները ընկճելէ յետոյ, փորձեց գրաւել Հալէպը, բայց ձախողեցաւ, վասնզի իր զինակիցը Լեւոն Բ. Հայոց թագաւորը թէեւ Միխայէլ Ասորիի պատմութենէն որոշ չի հասկցուիր կա՛մ այս պատերազմին առաջքն առնելու համար — ինչպէս խնդրուած էր Հալէպի հինգամեայ մանուկ թագաւորին՝ Ազիզի իմաստուն խնամակալին (Աթա-*

(1) *Գերիները ազատուած են* 16 *ամիս յետոյ* 1219*ին Լեւոնի մահէն քանի մը ամիս առաջ (Արքունի պատմիչ եւ Սմբատ)։ Յիշատակագիրը կ'ըսէ «ընդ սակաւ գնոյ դարձոյց զիշխանսն»։*

պէկ) կողմէ— կա՛մ իսկապէս իր զինակիցին անկեղծ ծառայութիւն մը մատուցանելու համար, կը տեղեկացնէ նամակով մը (514) թէ իրեն դէմ դաւադրութիւն մը սարքուած էր։

Կայ Քաուս կը թողու պատերազմի դաշտը և «հասեալ ի Կեսարիա՝ զամիրայն զայնոսիկ զփառաւորն խաչել հրամայէր» (Նոյն, 515)։

Արդեօք այս շրջանին Կեսարիա՞ն է մայրաքաղաքը Սելջուկեանց իշխանութեան։

Երեւոյթները այնպէս ցոյց կու տան, վասնզի ինչպէս տեսնուեցաւ Կեսարիա տարուեցան Հայ գերիները և յետոյ ալ հոն էր որ Սուլթանին դէմ դաւող մեծամեծները և ամիրաները մահապատիժին ենթարկուեցան։

Կայ Քաուս Ա. կը մեռնի 1219ին կամ 1220ին և իրեն կը յաջորդէ իր եղբայրը՝ Ալաէտտին Կայ Խոպատ Ա. (1220–1230) որ Սելջուկ Ռումի Սուլթաններուն ամէնէն փառաւոր դէմքն է, ստացած՝ «Մեծ» կոչումը այն յաղթանակներուն համար որ տարաւ Վրաստանի, Միջագետքի և Կիլիկիոյ մէջ (Asie Mineure, 523)։

Այս Սուլթանը նախ տիրեց Միջերկրականի երկայնքը՝ Հայ ու Լատին ասպետներու իշխանութեան տակ գտնուած ամրոցներուն և տարածեց իր իշխանութիւնը մինչև Սելեւկիա քաղաքը ուրկէ անդին անցնելէ հրաժարեցաւ միայն այն պայմանով որ Հայ իշխանները Սելջուկեանց հանդէպ ունենային այն դիրքը որ Տրապիզոնի Կոմնենեանք ունէին, այսինքն հարկատու դառնային և օգնէին զէնքով 'ի հարկին։

Հաւանական է նոյնիսկ մտածել թէ Հեթում իր գահակալութենէն (1226) անմիջապէս յետոյ, առ երկիւղի ինքն ալ խոհեմութիւն համարած է Ալաէտտին Կայ Խոպատ Սուլթանին գերիշխանութիւնը ճանչնալ և նորոգել այն դաշինքը որ Լեւոն թագաւոր կնքած էր իր մահէն քիչ առաջ, Ալաէտտինի հօր հետ, վասնզի Կիրակոս Գանձակեցի (95) որոշ կը գրէ թէ «արար սէր եւ միաբանութիւն ընդ Սուլտանին Հոռոմոց որոյ անուն էր Ալատին» կամ ինչպէս ժամանակակից Սմբատ Գունդստապլ (121) կը հաւաստէ թէ Հեթումի՝ Զապէլի հետ ամուսնութենէն յետոյ «եղեւ ուրախութիւն Հայոց, եւ եդին մեծ սէր ընդ Հոռոմայ Պապն, եւ ընդ Ալամանաց Օնբրուռն (կարդա՛ ինպերադօռ կայսր) եւ ընդ Ալատին՝ Սուլտանն Հոռոմոց»։



ԴՐԱՄ
ԱԼԱԷՏՏԻՆ
ԿԱՅ ԽՈՊԱՏ Ա.Ի
(1220 — 1236)

Հեթում այս կերպով իր զօրաւոր դրացիին բարեկամութիւնը շահեցաւ և այս համաձայնութիւնը պահեց մինչև անոր մահը(1)։

(1) Այս զինակցութիւնը նուիրագործուած է երկլեզուեան դրամներով՝ երկու թագաւորներուն արձանագրութեամբ։ Կղեմէս վրդ. Սիպիլեան, Դասաւորութիւն Ռուբինեան դրամոց, 1892, Վիէննա, 24–25, 79–80, յաւելուած, 16–22։



Բայց Ալաէտտին իր զինուորական ամենամեծ համբաւը շահեցաւ պատերազմով մը որ թէև փառաւոր, աղէտաբեր պիտի ըլլար Սելջուկեան կայսրութեան համար ապագային։ Ան իր դաշնակիցներուն, Էյուպեան իշխան Աշրաֆի և Քէմալի հետ միանալով պարտութեան մատնեց Խուարէզմի շահ Մուհամմէտ Ճէլալ-էտ-Տինը Երզնկայի մօտ (1230)։ Երբ յաղթական Սուլթանները իբր հաւատակիցներ գթութեամբ կը վարուին իրենց թշնամիին հանդէպ և հրաման կ'ընեն չհետապնդել փախչողները (Կիրակոս, 119–120)։



ԱԼԱԷՏՏԻՆ ԿԱՅ ԽՈՊԱԴԻ ԵՒ
ՀԵԹՈՒՄԻ ՄԻԱՑԵԱԼ ՏՊԱԾ ԴՐԱՄԸ

Այս յաղթութենէն ետք անոնք «դարձան ուրախութեամբ յաշխարհն իւրեանց եւ ընդ որ անցանէին ընդ քաղաքս եւ ընդ գաւառս ելանէին ընդ առաջ նոցա պարիսք եւ ծնծղայիւք եւ գովասացութեամբ ընդունէին: Իսկ Ալադինն իբրեւ եկն ի Կեսարիա Կապադովկիացւոց՝ ամենայն բազմութիւնն քաղաքին՝ հանդերձ քրիստոնէիւքն եւ քահանայիւք իւրեանց, խաչիւ եւ ժամահարօք՝ իբրեւ աւուր միոյ ճանապարհ ելին ընդ առաջ նմա: Իբրեւ մօտ եղեւ Սուլտանն, բազմութիւն Տաճկացն ոչ տային թոյլ քրիստոնէիցն խառն ինքեանցն հպիլ յերկրպագութիւնն Սուլտանին, այլ յետս կոյս մղեցին զնոսա: Եւ նոքա ելին ի բլուր մի հանդէպ բանակին, իբրեւ էհարց Սուլտանն թէ ո՞յք են նոքա, եւ գիտաց՝ թէ քրիստոնեայք են, ինքն իսկ մեկնեցաւ ի զօրուէն միայն, եւ գնաց ի մէջ նոցա եւ հրամայեաց հարկանել զժամահարսն, եւ պաշտել բարձրաձայն եւ այնպէս եմուտ ի քաղաքն, եւ ետ նոցա պարգեւս եւ առաքեաց յիւրաքանչիւր տեղիս» (Կիրակոս, 120):

Այսքան փառք և այսքան խանդավառութիւն ստեղծող յաղթանակը, աղէտ մը պիտի ըլլար յետոյ Ռումի Սելջուկ պետութեան համար, որ ճիշդ Բիւզանդական Պետութեան պէս իր այս յաղթանակով կը քանդէր միակ պատուարը որ կը կանգնէր Արեւելքէն նոր սպառնացող վտանգի մը՝ Մոնկոլներու արշաւանքին դէմ։



ԴՐԱՄ ԽՈՒԱՐԷԶՄԻ ՇԱՀ
ՄՈՒՀԱՄՄԷՏ ՃԷԼԱԼ-ԷՏ-ՏԻՆԻ

Ինչպէս որ Բիւզանդիոն քանդեց Հայոց տունը և դիւրացուց Թուրք-Սելջուկներու մուտքը իր հողերուն վրայ, նոյնը կ'ընէր ահա Ռումի Սուլթանութիւնը, որ անմտութիւնը կ'ունենար Խուարէզմի շահ Ճէլալէտտինի հետ պատերազմի բռնուելու, վասնզի անիկա գրաւած էր Շահ Արմէններու սեփական Խլաթ քաղաքը։

Անգամ մը անոր յաղթելէ յետոյ ճիշդ Բիւզանդական մտայնութեամբ վերջ տուաւ նաև Էրզրումի Սելջուկեան կողմնական (collateral) հարստութեան և անոր երկիրները կցեց իր պետութեան և պատուար մը եւս ջնջեց (Հմմտ. Սմբատ, 119)։

*Այս նոր ծաւալումը սակայն պատճառ եղաւ նոր պատերազմի մը, որովհետեւ Ալայէտտին Կայ Խոպաթի դաշնակից էյուպեան իշխանը, նախանձեցաւ այս նուաճումին համար։ Սուրիոյ և Միջագետքի տասն և վեց Մահմետական իշխանները, մեծ մասամբ էյուպեան, Եգիպտոսի իշխանին Մէլէք-էլ-Քամիլի առաջնորդութեամբ մեծ ուժերով քալեցին դէպի Փոքր Ասիա՝ իր դէմ։ Կայ Խոպաթի համար բարեբախտաբար՝ իշխանները չվստահեցան Եգիպտացիին ուժին վրայ և փորձը ցոյց տուաւ որ դժուար գործ մըն էր լեռնային լաւ ամրացուած անցքերէ թափանցել Փոքր Ասիոյ ներքին մասերը, այնպէս որ առաւելութիւնը մնաց Կայ Խոպաթի՝ որ գրաւեց Խարբերդը և ժամանակի մը համար՝ նոյնիսկ Հարան, Ար-Ռոտան և Ռաքքան* (1232)(1)։

*Այս քաղաքները սակայն քիչ վերջը կորսուեցան և Կայ Խոպաթ մեռաւ* 1234*ին (կամ* 1236*), իր որդւոյն և յաջորդին Ղայասէտտին Կայ Խոսրով Բ.ի* (1237-1247) *կողմէ տրուած թոյնով։*

*Այս անարժան որդին իր հօրմէն կը ժառանգէր ընդարձակ կայսրութիւն մը որ գրեթէ կ'ընդգրկէր ամբողջ Փոքր Ասիան, բացի Նիկիոյ և Տրապիզոնի Յոյն կայսրութեններէն և Կիլիկիոյ Հայ թագաւորութեններէն, որոնք սակայն ստիպուած էին հարկ վճարելու և Սուլթանին զօրքով օգնելու։ Սակայն Մոնկոլները որոնք ողողած էին Իսլամական տիրապետութեան ենթարկուած արեւելեան աշխարհը, Հայաստանը և Վրաստանը* (1232), *ջախջախած՝ Ռուսիան և զգետնած՝ Հունգարիան, ահարկու սպառնալիք մը կը ներկայացնէին այս պետութեան համար որ իրեն զինակիցներ ճարելու հետամուտ եղաւ, և բարեկամացաւ Լատիններուն* (1241), *Տրապիզոնի մեծ իշխանին, և Հայոց Հեթում թագաւորին*(2) *հետ և դաշնակցեցաւ* 1244*ին Նիկիոյ Յովհաննէս Տուկաս Վատացէս* (1222-1254) *կայսեր հետ Տրիպոլիսի մէջ* (Asie Mineure, 522 *և* Գելցէր, 411)։ *Այս մերձեցումը Փոքր Ասիոյ իսլամ և քրիստոնեայ իշխանութիւններու միջեւ, մէկ արդիւնքն էր Մոնկոլներու սարսափելի երկիւղին, որ մոռցնել կու տար անոնց բոլոր քաղաքական երկպառակութիւնները և կրօնական վէճերը, և կը միանային։*



ԴՐԱՄ
ՂԱՅԱՍԷՏՏԻՆ
ԿԱՅ ԽՈՍՐՈՎ Բ.Ի
(1237 — 1247)

---

(1) *Սմբատ* (119) *կարսի գրաւումէն յետոյ* «ոլորեցաւ անցի եւ երեկ էառ զՄելտինի եւ զԽարբերդ եւ զՉմշկածագն եւ զԱմիթ եւ զԾոփքն եւ մինչ Եփրատ կտրէ, զամէնն մլքեց եւ կորոյս զուլտնայքն, հայնց որ ելաւ, եկաւ Մըս-րայ Սուլտանն Անքափայ տիրոջն հյօգն ու չկարաց իրք առնել, խանգարեց զամէնն ու փախոյց»։

(2) *Հայ և Սելջուկ բարեկամութեան ի նշան Հիճրէթի* 637-641 (*Քր.ի* 1239-1243) *թուականներով Սիսի մէջ հատեալ են* (Տարպ պի Սիս) *երկլեզուեան դրամներ, Սուլթանին և Հայոց թագաւորին անուններով (տես Հ. Կղիմէս վրդ. Սիպիլեան,* Դաս. Ռուբ. Դրամոց, 24-25. 79-80. *յաւելուած*, 16-22)։



*Մոնկոլները՝ որ պատկառելով Ռումի Սուլթանին ուժէն և այս միութենէն, կը վարանէին անոր սահմաններէն ներս մտնել, վերջապէս* 1242*ին երբ Բաչու-Նուին յաջորդեց Չարմաղանին, իբր արեւմտեան կողմերու ընդհանուր հրամանատար, կը մտնեն Սելջուկ Ռումի Սուլթանին երկիրները, կը պաշարեն և կը գրաւեն Մալաթիան, և շատ աւարով և գերիներով կը դառնան։*

*Ղայասէտտին Կայ Խոսրով Բ. սաստիկ զայրացած խիստ պատգամներ կ'արձակէ Թաթարներուն և բազմաթիւ զօրք հաւաքելով,* 1243*ին անոնց դէմ կ'երթայ զանոնք պատուհասելու համար։*

*Բաչու, որ բոլորովին անպատրաստ չէր պատերազմի, կ'աճապարէ առաջ քալել և Երզնկայի քովէն անցնելով կը հասնի Աշխար Օվայի դաշտը — Երզնկայէն Սեբաստիա գացող ճամբուն վրայ — և հոն կը հանդիպի Սելջուկ Սուլթանին բանակին զոր չարաչար պարտութեան կը մատնէ* (641 *Մուհարրէմ* 6*ին* = 1243 *Յունիս* 26)։

*Այս փառաւոր յաղթութենէն յետոյ Կայ Խոսրով կ'ապաստանի Թօգատ և Մոնկոլները Սեբաստիոյ քովէն անցնելով* 1243*ին* «եկին պատեցին զքաղաքն **Կեսարիա** Կապադովկացւոց եւ պաշարեցին զնա. եւ զի ոչ եղեն ձեռնտու բնակիչքն, առեալ բռնութեամբ ի սուր սուսերի մաշեցին զբնակեալսն եւ յափշտակեալ որ ինչ ի նմա եւ թողեալ ամայի զքաղաքն» (*տես Կիրակոս Գանձակեցի*, 153-155 *և հմմտ. Վարդան*, 147 *և Սամուէլ Անեցի*, 150)։

*Իբն Պիպի օտար պատմիչը մանրամասն կը նկարագրէ Մոնկոլներու կողմէ Կեսարիան գրաւուիլը։ Անիկա կը հաստատէ թէ Ղայասէտտին Կայ Խոսրովի մայրը կ'ապաստանի Սիս՝ անոր զինակիցին Հեթումի արքունիքը, ինչ որ մեր պատմագիրներն ալ կը հաստատեն աւելցնելով թէ Իկոնիոնի Սուլթանին կինը և աղջիկն ալ միասին էին, ինչ որ անհաւանական չէ։*



ՂԱՅԱՍԷՏՏԻՆ ԿԱՅ ԽՈՍՐՈՎԻ ԵՒ ՀԵԹՈՒՄԻ
ՄԻԱՍԻՆ ՀԱՏԱԾ ԴՐԱՄԸ Ի ՍԻՍ

*Ըստ Իբն Պիպիի, Ղայասէտտինի գործակից զօրավարներէն Քէօստաղ, Սանսամէտտին, Քըմաս Ճամտար, Մուխաֆրէտտին Այաս, երբ ինքն Թօգատ փախաւ, իրենք ալ Կեսարիա փախան և քաղաքին բերդը ամրացուցին, անշուշտ Թաթարներու դէմ դիմադրութիւն մը կազմակերպելու համար։*

*Մոնկոլ զօրքը երբ հասաւ Կեսարիա, ինչ որ գտաւ բերդէն դուրս ամբողջովին ոչնչացուց։*

*Բաչու Նու յաջորդ օրը բերդին վրայ յարձակեցաւ։ Սեբաստիոյ դուռին դէմ դրաւ երեք խորտնկէց* (մանճըլըգ), *գերիները և իր բանակին հետեւող խառնիճաղանճը խորտնկէցը քաշելու յատկացուց։* 15 *օրուան բուռն պայքարէ յետոյ պարիսպին վրայ ճեղքեր բացուեցան։ Թաթար*

զօրքը հարուստ աւարով յղփացած կռիւը շարունակել չէր ուզեր և Կեսարիոյ գրաւումը տարի մը յետաձգելու փափաք կը յայտնէր։ Էրսիճ Պաճր կամ Էֆսիճ Պաճր(1) Խաչիկ Օղլու (Խաչուկ Օղլու) գիշերանց Բաչուի քովը սուրհանդակ մը ղրկեց և ապահովութիւն ուզեց, ինչ որ տրուեցաւ։

Խաչիկ Օղլու ասոր վրայ կոյուղիէն դուրս ելաւ և Թաթար բանակատեղին գնաց, Ներսը կռուողներուն և զօրքին տկարութիւնը յայտնեց։ Թաթար զօրավարը երբ այս խրողութեան տեղեկացաւ, դիրքի և ազդեցութեան տէր Խաչուկ օղլուի միջոցաւ հրաւէր ըրաւ անձնատուութեան, կրկին ապահովութիւն տալով թէ անոնց կեանքին պիտի խնայուի։ Խաչուկ օղլու այս հաւաստիքը պաշարուողներու կը հասցընէ։ Ասոր վրայ քաղաքին Սու պաշին՝ Թոփալ Այազ կը միանայ Խաչուկ օղլուի և Ներսը Սանսամէտտինէն զատ մարդ չի մնար։ Բաչու այս անգամ հրաման կուտայ յարձակողականի։ Իր զօրքերը սանդուխ դնելով աշտարակին վրայ ելան և հանդիպողը սպաննեցին և վար իջնելով բերդին դուռը բացին։ Բանակը ներս խուժեց, բնակչութիւնը ջարդեց և քաղաքը այրեց (Խալիլ Էտհէմ, Գայսէրի Շէհրի, էջ 79)։

Կեսարիոյ գրաւումէն յետոյ ըստ մեր պատմագիրներուն Թաթարները գացին Սեբաստիա(2) և զայն գրաւեցին և կողոպտեցին, միայն բնակիչներուն խնայելով, վասնզի ինչպէս առաջ իրենց ձեռնտու եղեր էին այս անգամ ալ ընծաներով և նուէրներով դիմաւորեր էին։ Հոն վերակացու մը դնելով կ'առաջանան մինչև Էնկիւրի (De Hammer, Hist. de l'Emp. Ottom. հտ. Ա., նաև Յ. Յակոբեան, նոյն, 78)։ Ի դարձին Թաթարները սաստիկ պաշարմամբ առին Երզնկան, մեծ կոտորած ըրին և շատ աւար և գերի առին։ Տիվրիկ անձնատուր եղաւ և մեծ տուգանք տուաւ։ Թաթար տիրապետութիւնը— որուն դառնութիւնը առաջին անգամ կը ճաշակէր Կապադովկիա 1243ին — մէկ անգամէն չտեղաւորուեցաւ հոն։ Ռումի Սուլթանը ստիպուեցաւ հաշտութիւն կնքել՝ ծանր տուրքի խոստումով և Մոնկոլները այս առաջին արշաւանքէն յետոյ քանի մը տարիներ քաշուեցան, վերջէն դարձեալ դառնալու համար։

Սելջուկեանց հեղինակութիւնը խորտակուած էր և մէկ անգամէն հարկատու դարձած էին Թաթար Խաներու։ Այս պարտութիւնը՝ թերեւս ուրախութիւն պատճառեց Նիկիոյ և Տրապիզոնի Յոյն կայսրերուն և մեր Հեթում թագաւորին, որոնք Իկոնիոյ Սուլթաններուն գերիշխանութեան ենթարկուած էին ակամայ։ Սակայն չէին նախատեսեր այն վտանգը որ այս կայսրութեան ընկճումով, իրենց կ'սպառնար։

Հեթում այս վտանգէն ազատելու համար ինքզինքն, անմիջապէս կ'ապաւինի Թաթարաց բարեկամութեան և զայն կը խնդրէ (Կիրակոս, 156)։

(1) Ըստ Խալիլ Էտհէմի թերեւս Թավաշիներու պետ կը նշանակէ (տես Գայսէրի Շէհրի, 79)։

(2) Խալիլ Էտհէմ՝ Իբն Բիպի վրայ հիմնուած Աշխարհ Օվայի ճակատամարտէն անմիջապէս յետոյ Սեբաստիան աւարի տրուած ցոյց կուտայ, ինչ որ թերեւս աւելի հաւանական է։



Այս առթիւ Կոստանդին թագաւորահայր անձամբ Կեսարիա կ'երթայ բանակցելու Թաթարներուն հետ (Ազգապատում, էջ 1622) որոնց կողմէն Սիմէոն Ասորի վարդապետը, Ռապան Աթա կոչուած (Կիրակոս, էջ 150) դեսպան կու գայ Հեթումին, և յանուն Բաչուի կը պահանջէ Սուլթանին ընտանիքին յանձնումը ըսելով որ «տուր զիփախստականդ, թէ չէ՝ քո ամէն ուխտն, որ հետ մեզ դիր, նա սուտ է» (Սմբատ, 122)։ Հեթում անելի կը մատնուի, «յոյժ տրտմեցաւ եւ ասէ. Լաւ էր ինձ եթէ զորդին իմ զԼեւոն խնդրէին յինէն՝ քան թէ զնոսա: Այլ քանզի երկնչէր ի նոցանէ, զի մի՛ մեծ չարեաց պատճառ լիցի այն, ակամայ կամաւ ետ ի ձեռս նոցա, այլ եւ ընծայս բազումս այնոցիկ՝ որ եկեալ էին տանել զնոսա, որք բերեալ ցուցին Բաչուին եւ այլոց գլխաւորացն, որք իբրեւ տեսին ուրախ եղեն, եւ մեծարանօք յարգեցին զդեսպանս արքային, եւ ... ետուն եւ գիր ըստ դենին իւրեանց, զոր Էլ-Տամղայն կոչէին» (Կիրակոս, 156. հմմտ. Սմբատ, 122)։

Այսպէս Հեթում կապուեցաւ Թաթարաց։ Ասոր վրայ Իկոնիոնի Սուլթանը «ոխացաւ» ինչպէս նաև «ամէն Տաճկունք» և ժողովեց հեծեալ զօրքը և առաջնորդութեամբ Ռուբինեանց արքայական տան թըշնամի Լամբրոնի տիրոջ Կոստանդինի, մտաւ Պապառոնի լեռնանցքէն Կիլիկիա և այրեց ամէն ինչ։ Պարոն Կոստանդին թագաւորահայրը և Սմբատ Գունդստապլ մտան Տարսոն և թագաւորը՝ Ատանա՝ հոն տեղերը ամրանալու համար։ Թուրքերը պաշարեցին Տարսոնը և «իջան ի դարոսն հետ զետին», գերեցին բոլոր երկիրը և վեց օր կեցան և ապա Կուկլկայ Կապանէն (հիմա Կիւլէկ Պօղազի) ետ դարձան, երբ թագաւորահայրը և Սմբատ Գունդստապլը զանոնք հետապնդելով հասան անոնց Մայծառ ըսուած տեղը, ուր ճակատամարտ մը տեղի ունեցաւ։ Հայերը յաղթեցին և մինչև Պուտանդէ (Պոտանտոս = այժմ Պոզանթի) հետապնդեցին Թուրքերը (1245) (տես Սմբատ Գունդստապլ, էջ 122–123. Կիրակոս, 157)։

Յաջորդ տարին (1246) Սուլթանը 260,000 զօրքով դարձեալ Կիլիկիոյ դուռներէն (= Կիւլէկ Պօղազի) անցնելով մտաւ դաշտային Կիլիկիա և պաշարեց Տարսոնը, ուր էին թագաւորահայրը Կոստանդին և Սմբատ Գունդստապլ իրենց բանակով։

Թշնամիները «ի ջրմտին դեհն ու ի ջրելին աղէկ նետընկէց մը փլուցին զպարիսպն» և ներս մտնելով շատ կոտորած ըրին, սակայն պատմագիրը կ'ըսէ թէ «բայց ի դրացէն՝ հարիւրապատիկ. զի ունէաք ընդ ներքս աղէկ Ֆռանկի չարխաւորք» (Սմբատ, 123)։

Հեթում թագաւոր ստիպուեցաւ Պռանկանա բերդը(1) տալ հաշտութիւն ձեռք բերելու համար։ Հայերը այս պայմանին համակերպած էին վասնզի տեղեակ չէին թէ Իկոնիոնի Սուլթանը յանկարծամահ եղած է, եթէ ոչ ինչպէս Սմբատ Գունդստապլ (124) կ'ըսէ, պիտի չընդունէին «զի կարէաք նեղել»։ Արդարև Ղայասէտտին Կայ Խոսրով Բ. մեռած էր (1246ին, ըստ այլոց 1247ին) Ալայայի մէջ, և Հայերը առանց գիտնալու այս պարագան հաշտութեան դաշինք կնքած էին.

Սելջուկ պետութեան մայրամուտը կ'սկսէր, և ինչպէս բոլոր անկումի ճամբուն վրայ գտնուող պետութիւններու պատահած է, պառակտումը ու ներքին քայքայումը ծայր կու տային։

(1) Որուն վրայ խօսեցայ արդէն (տես 506) սահմանագլուխի վրայ վայր։

Ղայասէտտին Կայ Խոսրով Բ.ի երեք որդիները Ռուքնէտտին, Ազէտտին և Ալայէտտին Կայ Խոպաթ երեքն ալ ծնած երեք տարբեր մայրերէ և ամէնքն ալ անչափահաս, իրենց կուսակիցներու կողմէ միաժամանակ գահ բարձրացուեցան(1)։ Ասոր համար էր անշուշտ որ Ռուբրուք ուղեւորը որ Գոնիա գտնուած է այդ օրերուն (1253–1255) հեգնօրէն կը պատմէ թէ երկիրը կը կառավարուէր «մանուկներով» (Ց. Ցակոբեան, Ուղեգրութիւններ, 30)։

Ռուքնէտտին ծնած էր՝ Յոյն քահանայի մը աղջիկը եղող կնոջմէն(2) և հազիւ 11 տարեկան էր երբ հայրը մեռաւ։ Ազէտտին ծնած էր Իկոնիացի հարիւրապետի մը աղջիկէն և 7 տարեկան էր։ Ալայէտտին ծնած էր Վրաստանի թագուհիին Ռուսուտանի դուստր Թամարէն։

Վէնսեննտը Գովեն կը պատմէ թէ Պարսիկ մը որ Լոսիր(?) կը կոչուէր(3) և վարած էր Ղայասէտտինի վեզիրութիւնը, անոր մահէն յետոյ կնութեան կ'առնէ անոր յունածին այրին(4) և անոր Ռուքնէտտին զաւակը գահ կը բարձրացնէ իր խնամակալութեան տակ, հակառակ անոր որ Ղայասէտտին իրեն յաջորդ նշանակած էր իր նախընտրած երկրորդ կնոջ՝ Թամարի զաւակը Ալայէտտին Կայ Խոպաթը, որուն հաւատարմութիւն ուխտած էին բոլոր էմիրները (Հմմտ. Ց. Ցակոբեան, Ուղեգրութիւններ, 32)։

Այն ատեն Ազէտտին՝ երրորդ որդին որ իսլամ կնոջմէ ծնած էր, խումբ մը Թուրքերու և Թուրքմէններու հետ կը դաւադրէ։ Անոնք որոշած էին սպանել Ղայասէտտինի քրիստոնեայ կիներէն ծնած զաւակները որոնք գահուն համար կը մաքառէին և գահ բարձրացնել իսլամ կնոջմէ ծնած Ազէտտինը։

Սակայն Ազէտտին Կայ Քաուս պարտուեցաւ և իր հետեւորդներէն շատերը սպանուեցան։ Երկրորդ անգամ անիկա բանակ կազմեց և դարձեալ կռուի ելաւ և այս անգամ գերի ինկաւ և 1253–1255ին տակաւին կը պահուէր շղթաներու մէջ։

Յոյն կնոջ զաւակը՝ որ Ռուբրուք Պակատեր կը կոչէ, մինչ պիտի ըլլայ Ռուքնէտտին Գըլըճ Ասլան Դ. կը համաձայնի գահը բաժնելու

(1) Կիրակոս Գանձակեցի (178) «Մեռաւ Ղիաթասին Սուլթանն որդիք երկուք մանուկ տիովք» կ'ըսէ երրորդը չի յիշեր։

(2) Ըստ Ռուբրուքի հարճ էր։

(3) Վէնսեննտը Գովեն՝ Պարսիկը՝ Լոսիր կը կոչէ, և փոխանակ վեզիրի զայն դիւանապետ կը ճանչնայ։ Դիւանապետը՝ վեզիր կարելի է ենթադրել վասնզի այն ժամանակի ըմբռնումը կը նոյնացնէր այս երկու պաշտօնները։ Ռուբրուք ուղեւորը «զօրաւոր էմիր մը» ըսելով կը բաւականանայ։ Կը կարծեմ թէ պէտք է զայն նոյնացնել Մուինէտտին Սիւլէյման վեզիրին հետ (տես Encyclopedia Britannica. New-York 1911, հտ. ԻԴ.) որ Ռուքնէտտինի վեզիրը եղած է։ Ց. Ցակոբեան (Ուղագրութիւններ, 32) զայն կը նոյնացնէ Մահմետական պատմագիրներու Փէրվանէին հետ, կարծելով թէ Փէրվանէն անուն է անձի, մինչ անիկա պաշտօն մըն է լոկ, համապատասխան արդի Նախարարապետներուն կամ աւելի ճիշդ Անգլիոյ Լորտ Կնքապահին։

(4) Ըստ Ռուբրուքի՝ Սուլթանը իր կենդանութեան անոր կնութեան տուած էր իր հարճը։



իր խորթ միւս եղբօրը՝ Ալայէտտինի հետ զոր Ռուբրուք անգամ մը «տկար արարած» և անգամ մը «փափկասուն» կը կոչէ։

Ռուքնէտտին Գըլըճ Ասլան Դ. իր այս եղբայրը կը ղրկէ Թաթարներու մօտ, կարգադրութեամբ իր վրացի մօր ազգականներուն։

Այդ ուղեւորութիւնը Ալայէտտին կը կատարէ 1254ին, Մանկու խանին երթալու համար։ Սակայն առանց հասնելու անոր մօտ կը մեռնի (Ց. Ցակոբեան, նոյն, 32. հմմտ. Կիրակոս Գանձակեցի, 188-189)։

1256ին Թաթարաց մեծ իշխանը Հուլաղու հրաման կը ղրկէ ամէն Թաթար իշխաններու, որոնք իրենց Բաչու-Նու զօրավարին հրամանատարութեան ներքև էին, որ թողուն իրենց բնակութեան կալուած երկիրները՝ Մուղանը, և Աղուանից, Հայոց և Վրաց երկիրները և երթան բնակին իրենց կահ կարասիներով և ինչքերով Սելջուկ Ռումիներու աշխարհը «զի ինքն նստցի փոխանակ նոցա ի բարի երկիրն, զի յոյժ բազմութեամբ եկեալ էր նա, մինչ զի ասեն՝ թէ ամիս մի հազիւ բովանդակեցաւ զօր նորա անցանել ընդ մեծ գետն Ջիհուն»։

Թաթար զօրքը շատ ցաւեցաւ իր գրաւած և տեղաւորուած երկիրներէն հեռանալ հարկադրուած ըլլալուն համար, բայց մեծ իշխանին վախէն թողուցին գացին։ Երբ հասան Ռումիներու երկիրը, Ռուքնէտտին Գըլըճ Ասլան Դ. դէմ ելաւ պատերազմով, բայց իր ոյժը անբաւական ըլլալով դիմադրելու, փախաւ Ալայա, Պամփիւլիոյ եզերքը։ Իսկ թշնամիները անոր տէրութեան բոլոր գաւառներուն մէջ մինչև Միջերկրական և Պոնտոս ծովերը, ահագին կոտորած տուին, գրաւեցին և ջարդեցին Կարինը, Երզընկան, Սեբաստիան, Կեսարիան և Գոնիան և անոնց շրջակայքը։ Եւ Հուլաղուի հրամանով իրենց կահ կարասին ետ դարձուցին, որ երթան իրենց իջեւանները և իրենք նոյն կողմերը շրջեցան ասպատակութիւններով։ Ասոնց քով հասաւ նաև Հեթում Հայոց թագաւորը, որ Մանգոյ խանին այցելութենէն կը դառնար և կեցաւ Բաչու-Նուինի քով, որ զինքը բազմաթիւ զօրքերով դարձուց Կիլիկիա՝ Սիս քաղաքը (տես Կիրակոս, 217-220)։



ԴՐԱՄ ՄԱՆԳՈՒ ԽԱՆԻ

Այս երկու գլխաւոր Թաթարական արշաւանքներէն յետոյ, Ռումի Սուլթաններուն իշխանութիւնը տկարացաւ, և երկիրը ենթարկուեցաւ Թաթարներու գերիշխանութեան — ինչ որ Ռուբրուք կը հաստատէ։ Թաթարները կը միջամտեն երկրին գործերուն և զայն երկուքի կը բաժնեն։ Ազէտտին կամ Իզզէտտին Կայ Քաուս Բ. (1247–1266) արձակուելով իր բանտէն, գահ կը բարձրանայ, և կ'իշխէ Ալիսի արեւմըտեան գաւառներուն վրայ, Ալայա մայրաքաղաքով և Ռուքնէտտին Գըլըճ Ասլան Դ. (1247–1267)(1)՝ կ'իշխէ արեւելեան նահանգներու վրայ, ընդ որս Կեսարիոյ, Գոնիան ունենալով իրեն մայրաքաղաք։

Սելջուկեանց այս տկարացումէն և երկբեղկումէն ինչպէս կը թուի օգտուած է մեր Հեթում թագաւորը որ իբր դաշնակից Թաթարաց, ա-

(1) Բրիտանական Համայնագիտարանը (1259-1267) նշանակած է։

նոնց բարեկամութեան վրայ յոյս դնելով կը ջանայ գրաւել այն հողերը որոնք երբեմն Տաւրոսի անդին կողմը՝ իր նախորդին Լեւոն Թագաւորին կը պատկանէին։ Սմբատ Գունդստաբլը կը պատմէ թէ Պռականա ամրոցը — որ 1244ին Հայերը Տարսոնի պաշարումը վերցնելու համար զիջած էին Սելճուկներուն, իմացած չըլլալով անոնց Սուլթանին մահը — «յետ երկու տարւոյ (= 1246) գողացաք» և կը թուէ այս առթիւ անոնց տուած մեծ կորուստը (100.000 մարդ) 20 օր տեւող անձրեւի մը հետեւանօք (Սմբատ, 124)։ Նոյնպէս, ինչպէս կը հասկցուի քանի Թաթարները կ'առաջանան Հեթում այնքան համարձակութիւն ստանալով, երկու անգամ (մին 1255ին և միւսը 1259ին) կ'անցնի Տաւրոսը Կիլիկիոյ դուռներէն (Կիւլէկ Պօղազի) և դէպի Կապադովկիա, դէպի Արգէոսի փէշերը կ'առաջանայ։ 1255 Հոկտեմբերին «աշխարհաժողով արարեալ ... որ եւ ասէին թէ ժողովեցան իբրեւ բիւրս տասն, եւ արշաւեաց նոքօք 'ի գաւառն Հոռոմոց, առ ստորոտով լերինն Տաւրոսի, մերձ ի քաղաքն Առակլի (= Էրէկլի), ի Փողն Եկեղեցեաց(1) եւ ի Մուռանդին(2), եւ անդ շահեցան արջառս եւ ոչխարս, ձիս եւ ջորիս, ծառայս եւ աղախինս, եւ բազում աւարաւ դարձաւ յաշխարհն իւր եւ ուրախացան ոչ սակաւ աւուրս» (Պատմիչ Կիլիկիոյ. տես Սիսուան, 174)։

Անշուշտ Թուրքերը ձեռնածալ հանդիսատես չէին մնար և իրենք ալ կը փոխադարձէին, այնպէս որ Հեթումի դէպ ի Արգէոսի շրջակայքը կատարած այս արշաւանքները տեւական բնոյթ չեն ունեցած և քանիցս տրուած առնուած պէտք է ըլլան այս հողերը։

Այս պայքարի մէջ է որ Հեթում անգամ մըն ալ կ'անցնի Տաւրոսը նոյն անցքէն հաւանօրէն «ի թուին 708 (= 1259)» և «էառ զբերդն Մունտաս»(3) (Սմբատ, 124)։ Կիլիկիոյ պատմիչը (տես Սիսուան, 177-8) շատ մանրամասն կը պատմէ հոն պատահած դէպքերը, բերդին նախապէս Հեթումի յունադաւան իշխաններէն՝ Օշինի կողմէն գրաւումը և Իկոնիոնի Սուլթան Ռուքնէտտինի զայն պաշարելը՝ երբ հոն ապաստանած էին շրջակայքի քրիստոնեաներէն շատերը։ Նոյնպէս կը պատմէ թէ քաջ անձ մը կը յաջողի բերդէն ելլել և գաղտնի ճամբաներէն անցնիլ Տաւրոսի լեռնաշղթան և գալ Կիլիկիա Հեթումին իմացնել եղածը։ Հեթում «հրամայեաց զօրաց իւրոց ժողովել եւ առեալ զնոսա գնայր վաղվաղակի եւ եհաս մինչեւ ի սահմանս բերդին»։ Հոն հրաշապատում կռիւի մը մէջ յաղթանակը կը մնայ Հայոց և կը կոտորուին թշնամիները, որոնցմէ մէկ մաս մը կը փախչի Առակլի, մաս մըն ալ Իկոնիոն։ «Իսկ թագաւորն բազում աւարաւ եւ կարասեաւ նոցա դարձաւ խաղաղութեամբ ի Կիլիկիա եւ զայնքան բազմութիւն հաւաքելոցն ի նոյն դղեկէն հանեալ՝ եբեր յաշխարհն իւր»։

(1) Ալիշան (Սիսուան, 178) կը կարծէ թէ Պին Պիր Քիլիսէ անունով ճանչցուած վայրն է որ կը կոչուի նաև Մատէն Շէհիր։

(2) Մուռանտին 1265ին կը յիշուի Սմբատ Գունդստաբլի ձեռքը (Սիսուան, 178)։ Ալիշան (Նոյն) ենթադրութեամբ մը կը կարծէ թէ պէտք է ըլլայ արդի Պուռնատա որ կը գտնուէր Գափագըլը լերան ստորոտը (Նոյն, 174)։

(3) Կամ Մունդոս որ բերդ և գիւղակ յիշուած է։ Հիմա Մենտոս Գալէսի՝ Կիլիկեան անցքէն դէպի Էրէկլի տանող ճամբուն վրայ (Մելիք Թէվէքէլ, ՀԱ. 1914, 159. Սիսուան, 176)։



Հեթում ի վերջոյ հաստատուն վիճակ մը ստեղծելու և շարունական պատերազմին վերջ տալու համար կը դիմէ միջնորդութեանը Թաթարներու Հուլաղու Խանին որ 1263ին իրաւարարներ կը ղրկէ, «որք եկեալ զկնի թագաւորին մինչեւ Առակլի, եկն անդ եւ Սուլտանն Հոռոմոց Ըռուզնատինն, եւ եղեն անդ աւուրս ինչ եւ եդին դաշինս սիրոյ երդմամբ, եւ արարին խաղաղութիւն, եւ դարձան իւրաքանչիւր ի տեղի իւր» (Պատմիչ Կիլիկիոյ. Սիսուան, 174)։ Այսպէս Թաթարներու ազդեցութեամբ երկու պետութեանց մէջ համաձայնութիւն մը կը գոյանայ, և Արգէոսի ստորոտը գտնուող քրիստոնեաներէն շատեր այս առթիւ կ'անցնին Կիլիկիա։ Այսպէս քիչ շատ հաստատուն վիճակ մը կ'առնեն գործերը Փոքր Ասիոյ մէջ, սակայն Ազէտտին Կայ Քաուս Բ. իր եղբայրը Ռուքնէտտինը վտարելու համար այն երկրամասէն որ Մոնկոլները անոր տուած էին և իր անկախութիւնը ձեռք բերելու համար, Եգիպտոսի Մեմլուք Սուլթանին հետ կը դաշնակցի և կը յաջողի փախցնել զայն։ Ռուքնէտտինը կ'ապաստանի Թաթարներուն քով, որոնք Ազէտտին Կայ Քաուս Բ.ը պատժելու համար Մոնկոլ բանակով մը զայն կը վերահաստատեն։ Ազէտտին անոնց ձեռքը գերի չիյնալու համար կը փախչի Կ. Պոլիս։

Ռուքնէտտին Գըլըճ Ասլան Դ. կը տիրէ գահուն սակայն կը դառնայ անուանական վեհապետ մը միայն, իրական իշխանութիւնը գտնուելով ձեռքերուն մէջ իր վէզիրին, Մուինէտտին Սիւլէյմանի, որ 1267ին Աքապայի Մոնկոլ Խանէն հրաման բերել տուաւ զայն գըլխատելու համար։

Վէզիրը գահ բարձրացուց իր մանուկ որդին Ղայասէտտին Կայ Խոսրով Գ.ը (1267-1284) և երկիրը կառավարեց դեռ տասը տարի (1267-1277), մինչև որ մասնակցեցաւ դաւադրութեան մը որ քանի մը էմիրներ սարքած էին Մոնկոլները վտարելու համար Եգիպտոսի Մեմլուք Սուլթանին՝ Պիպարսի կամ Պունտուգտարի օգնութեամբ։

Պիպարս քալեց Փոքր Ասիա և Մոնկոլներուն յաղթեց Ալպիսթանի արիւնալի պատերազմին մէջ (1277), բայց երբ աւելի յառաջացաւ դէպի Կեսարիա, Մուինէտտին Սիւլէյման քաշուեցաւ, վարանելով իրեն միանալ գործելու բուն վայրկեանին։ Հետեւաբար, Պիպարս իր կարգին ետ քաշուեցաւ և մատնեց Սիւլէյմանը վրէժխնդրութեանը Թաթար Խանին, որ շուտով հասնելով անոր դաւը և հրամայեց բարբարոս գլխատում մը (1277)։

Ապտէրրազզագ Իբն էլ Ֆուլթի կամ Ֆաուլթի անուն նոր յայտնըւած արաբ պատմագիր մը, նոյն դէպքը կը պատմէ բոլորովին տարբեր կերպով։ Անիկա կը գրէ թէ 1277 (Հիժրէթի 676) «տարուան ընթացքին Ֆունտուզտար թագաւորը բանակով առաջ քալեց դէպի Ռումի երկիրները նպատակ ունենալով Պարվանան(1) մեռցնել: Արշաւանքին լուրը առնելով՝ այս վերջինը ծովեզերեայ բերդի մը մէջ ապաստանեցաւ: Ֆունտուզտարի ընդ առաջ գացին 3000 հեծեալ մոնկոլներ եւ հանդիպումը տեղի ունեցաւ Կեսարիոյ առջեւ, ուր եւ մղուեցաւ ճակատամարտը»:

«Ֆունտուզտար պարտութեան մատնեց մոնկոլները, որոնց մեծ մասը սպանուեցաւ, իսկ մնացածները փախան: Կեսարիոյ դուրսի կողմը 15 օր մնալէ յետոյ

(1) Փէրվանէն կամ վէզիրը որ էր Մուինէտտին Սիւլէյմանը։

քաղաք մտաւ Ֆունտուզտար(1), որուն բանակը հպատակ ժողովուրդէն ալ մէկուն վնաս չհասցուց: Ան յայտարարեց հետեւեալը. «Ես չեմ եկած այս երկիր քանդելու, այլ եկած եմ ազատելու համար զայն մոնկոլներու ձեռքէն»: Երբ ալ որոշած էր ետ դառնալ, կողոպտեց քրիստոնեաները, ինչքերնին գրաւեց, զաւակները գերի վարեց, բայց անոնցմէ մարդ չսպաննեց: Ապա ճամբայ ելաւ վերադառնալու համար դէպ ի իր երկիրը եւ հետը տարաւ Պարավանան եւ անոր զաւակներն ու կինը...» (*Թրգ. Գէորգ Մըրլեան, տես* Յուսաբեր, *Ի. տարի, Թ.* 166, 16 *Հոկտ.* 1934)։

*Ռուքնէտտին Սիւլէյմանի՝ այս կերպ կամ այն կերպ մահէն յետոյ Կայ Խոսրով Գ. շարունակեց անուանապէս տիրել մինչև 1284, մինչ իրականին մէջ երկիրը կը կառավարէր Մոնկոլ փոխարքայ մը։*

*Մասուտ, Ազէտտին Կայ Քաուսի որդին, որ իր հօրը մահուան ատեն Խրիմէն փախած էր Մոնկոլ Խանին մօտ և անկէ ստացած էր Սեբաստիոյ, Մալաթիոյ, Երզնկայի և Էրզրումի կառավարութիւնը Կայ Խոսրով Գ.ի կենդանութեան ատեն (1282), անոր մահէն (1284) վերջ Սելջուկեանց գահը բարձրացաւ, Արկուն Խանի (1283–1287) կարգադրութեամբ։*

*Բայց իր հեղինակութիւնը հազիւ կը յարգուէր իր իսկ բնակավայրին մէջ, որովհետև քանի մը Թուրք էմիրներ անկախութիւն հռչակած էին։ Մոնկոլները զանոնք նուաճել փորձեցին, բայց անոնք լեռները քաշուեցան՝ նորէն երեւնալու համար անմիջապէս որ Մոնկոլները մեկնին։*

*Մասուտ Բ. զոհ գնաց, հաւանաբար 1297ին (ոմանք 1305ին կ'ըսեն) վրէժխնդրութեանը իր էմիրներէն մէկուն՝ որուն հայրը մեռցնել հրամայած էր։*

*Իրմէ վերջ, Ալայէտտին Կայ Խոպատ Բ., որդին իր եղբօր Ֆարամարզի, Գոնիա մտաւ որպէս Սուլթան 1298ին, բայց իր տիրապետութիւնը այնքան մթին է որ ոչինչ կրնայ ըսուիլ անոր մասին։*

*Կարգ մը հեղինակներ կը հաստատեն որ անիկա կառավարեց միայն մինչև 1300, մինչ ուրիշներ՝ իր իշխանութիւնը մինչև 1307 և նոյնիսկ ոմանք մինչև 1315 տեւած ցոյց կու տան։*

*Իրմով վերջացաւ Սելջուկներու հարստութիւնը։ Այսպէս Իկոնիոյ Սուլթանութիւնը որ հազիւ երկու դարու կեանք ունեցած է (1076–1300) Թաթարական ուժին առջև ընկճուած, քայքայուած և անէացած է։*

---

(1) Քէմալէտտին (234) *որ աններելի սխալով մը 1377ին կը նշանակէ Եգիպտոսի Պիպարս Սուլթանին դէպի Կեսարի արշաւանքը, կը հաստատէ թէ անիկա մտած է Կեսարիա և աւելին ըլլալով՝ հոն դրամ ալ հատած է։ (Քէմալէտտին իբր աղբիւր ցոյց կու տայ Գալըքէսիրի Մէմուս Իսմայիլ Հագգըի մէկ յօդուածը* Ագարա-Սըվազ Տէմիր Եօլու Ալպօմը *գործին մէջ)։*



ԺԳ.

# ՀԱՅՔ ՍԵԼՋՈՒԿ ՌՈՒՄԻ ՍՈՒԼԹԱՆՆԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**(1069 — 1300)**

---

Ա.

## ՍԵԼՋՈՒԿ ՌՈՒՄԻ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐՈՒՄԸ ՀԱՆԴԷՊ ՔՐԻՍՏՈՆԵԱՆԵՐՈՒ՝ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ ԵՒ ՀԱՆԴԷՊ ՀԱՅՈՑ՝ ՄԱՍՆԱՒՈՐԱՊԷՍ

*Սելջուկ Ռումի Սուլթանութիւնը իր նկարագրով, ծագումով և զարգացմամբ ունէր բազմաթիւ նմանութիւններ Դանիշմանդի իշխանութեան հետ պատմական միեւնոյն շրջանի ծնունդը, և նման աշխարհահայեացքի մը արգասիքը ըլլալով (տես վերը,* 487)։

*Այս պետութեան հիմնադիրին՝ Սիւլէյման Իբն Գութլումիշի յաջողութեան գաղտնիքը կը կայանար այն տնտեսական մեծ յեղափոխութեան մէջ որ անիկա գործադրեց ի Փոքր Ասիա, ջնջելով ստրկութիւնը և հողատէր կեղեքիչները (տես վերը,* 496), *ինչ որ Բիւզանդական կայսրերէն ոմանք ծրագրած էին, առանց սակայն յաջողելու (տես վերը,* 373–376)։ *Այս կերպով այս տունը կրցաւ իր տիրապետած երկիրներուն բնիկ բնակչութեան համակրութիւնը շահիլ, և օգտուելով պարագաներէն որոնք նպաստաւոր էին, հետզհետէ զօրացաւ և Խաչակրութեանց շրջանին չափազանց կարեւոր դեր մը կատարեց, վասնզի որքան ուժ ու քաջութիւն նոյնքան ալ քաղաքական հասունութիւն և իմաստութիւն ունեցաւ Յոյներու և Խաչակիրներու միջեւ գոյութիւն ունեցող փոխադարձ թշնամութեններէն օգուտ քաղելու և զանոնք շահագործելու ի նպաստ իր նպատակներուն և կազմելու ընդարձակ պետութիւն մը, Փոքր Ասիոյ սրտին վրայ տեղաւորուած։*

*Այն երկիրները որոնք իր տիրապետութեան տակ ինկած էին քրիստոնեայ երկիրներ էին, չէն ու բարգաւաճ, որոնց եկած տիրած էին Թուրքերը և հպատակեցուցած քրիստոնեայ բնիկները որոնք մեծամասնութիւնը կը կազմէին բնակչութեան, ո՛չ միայն պետութեան կազմակերպման առաջին տարիներուն այլ նաեւ անոր վախճանին։ Ուիլեամ Ռուբրուք որ* 1253–1255*ին անցած է իբր պատուիրակ այս երկրէն, կ'ըսէ թէ* «դուք պէտք է գիտնաք Թուրքերու մասին, որ անոնց երկրին մէջ տասը մարդերէն մէկը Սարակինոս(1) է, գրեթէ ամբողջութեամբ Հայեր են եւ Յոյներ» (*Յովհ. Յակոբեան*, Ուղեգրութիւն, 30):

---

(1) *Տրուած ըլլալով որ Սարակինոս բառը կը գործածեն Եւրոպացիք անձուկ մտքով արաբներու և ընդհանուր իմաստով մահմետականաց համար, ըստ այս վկայութեան Ռումի պետութեան բնակչութեան մէկ տասներորդը միայն մահմետական էր։*

Բնակչութեան այս համեմատութիւնը հաւանօրէն հարկադրեց խորագէտ Թուրքերը ընդգրկել սիրաշահող քաղաքականութիւն մը հանդէպ քրիստոնեից, մանաւորապէս Հայոց, որոնք պետութեան մէջ շատ կարեւոր դեր մը ունէին, քանի որ ո՛չ միայն անձուկ մտքով Հայերով լեցուն Փոքր Հայքը եւ Հայաբնակ դարձած Կապադովկիան՝ այլ նաեւ իր լայնագոյն սահմաններով Բիւզանդական Հայկական բանակաթեմին բովանդակ տարածութիւնը, — ուր Հայկական ծագմամբ բնակչութեան մը գոյութիւնը կը կանխէր դարերով Սելճուկեանց տիրապետութիւնը — Սելճուկ Ռումի Սուլթանութեան մասերը կը կազմէին։

Սելճուկեանք ընդգրկեցին ուրեմն պետական վարչութեան մէջ դրութիւն մը որ տանելի ըլլար քրիստոնեից համար։ Ուստի անոնք իրենց հպատակներուն ընծայեցին երկու մեծ առաւելութիւններ. Ա. հնարաւորութեան սահմանին մէջ պարտուց եւ իրաւանց հաւասարութիւն եւ աշխատութեան ազատութիւն եւ Բ. կրօնական ազատութիւն, որուն մանաւորաբար կարօտն ունէին Հայերը, չարաչար տառապած ըլլալով օրթոտոքսներու հալածանքներէն։ Այս իսկ պատճառով Հայերը այն տարրը եղած են որ աւելի մեծ յարում եւ անձնուիրութիւն ցոյց տուած են հանդէպ այս պետութեան, որուն վարիչներն ալ փոխադարձաբար աւելի մեծ վստահութիւն ցոյց տուած են Հայոց նկատմամբ, վասնզի անոնք ալ իրենց պէս եկուոր էին եւ երկրին նախկին տէրերը ըլլալու յաւակնութիւնը չունէին Յունաց պէս, որոնք իբր կրօնակիցներ Բիւզանդիոնի, այս պետութեան ոսոխին, — որ միշտ կը տուայտէր իրմէ կորզուած երկիրները վերագրաւելու մղձաւանջով — բնական է որ քիչ շատ կասկածով կը դիտուէին։



ԴՐԱՄ ՀՈՒԼԱԳՈՒԻ

Եթէ Կիլիկիոյ թագաւորներն ալ կռուած են Ռումի Սուլթաններուն հետ եւ դէպի Տաւրոսի հիւսիսակողմը, դէպի Արգէոս եւ Կեսարիա արշաւանքներ ըրած են, անոնք սոսկ վաղանձուկ պատահարներ էին, որոնք շուտով բարեկամութեան եւ հասկացողութեան մը յանգեցան, քանի որ Լեւոն եւ Հեթում խոհեմութիւն ունեցան շահելու Իկոնիոնի Սուլթանին զինակցութիւնը, որ պահպանուեցաւ մինչեւ Թաթարներու զօրանալը, որ խանգարեց այս հասկացողութիւնը եւ բարի դրացնութեան յարաբերութիւնները (տես վերը, 504-510)։

Այնպէս որ Հայոց դիրքը երկրին մէջ գրեթէ միշտ առանձնաշնորհեալ ըլլալ կը թուի, ինչպէս կարգ մը իրողութիւններ ալ կը հաստատեն։

Ասոնց մէջ առաջին տեղը կու տամ իրողութեան մը որ թէեւ աւանդութիւնները կը բերեն կը հասցնեն մեզի, սակայն պատմական են, միայն վաւերագիրներով հաստատուած չեն։ Ատիկա սա է որ բազմաթիւ եկեղեցիներ կամ վանքեր Յոյներէն գրաւուելով Հայոց յանձնուած են, անշուշտ Հայերու շնորհք մը կամ հաճոյակատարութիւն մը ընելու համար, արհամարհելով Յունաց գրգռութիւնը եւ զայ-



րոյթը որ շատ բնականաբար կը բորբոքէր երբ իրենցմէ այս հաստատութիւնները կը գրաւուէին եւ կը տրուէին մրցակից եւ հակառակորդ ուրիշ քրիստոնեայ համայնքի մը՝ որպիսին էր Հայ ժողովուրդը։

Որչափ որ ալ ազգային աւանդութիւնը մերժէ այս տեսակ իրողութիւն մը, մինչեւ Ս. Լուսաւորիչ բարձրացնելով Կեսարիոյ Ս. Կարապետ մայրավանքին կառուցման թուականը եւ անոր հայկական հանգամանքը, պատմական քննադատութիւնը չի կրնար հաստատել եւ ընդունիլ այս աւանդութիւնը, առանց մերժելու դարաւոր հնութիւնը այս վանքին, որ եթէ ո՛չ զուտ յունական, անժխտելիօրէն Օրթոտոքսական էր իր ծագումով եւ ամենամեծ հաւանականութեամբ ԺԲ. դարուն Սելճուկ իշխանութիւններու կողմէ գրաւուած էր Յոյներէն եւ տրուած Հայոց (Հմմտ. Սերովբէ քհ. Պուրմաեան, Հայ Խօսնակ, Բ. տարի, 68), իր Ս. Հրեշտակապետ մատուռով միասին, եւ Յոյները ասոր համար մօտակայ Ս. Եղիա լերան սարահարթին վրայ, դէպի արեւելք, Հայոց վանքէն 20 վայրկեան հեռու, շինած են, նոր վանք մը նոյն Ս. Հրեշտակապետ (Տաքսիարխոն) անունով (Հմմտ. Հմայեակ Ուղուրլեան, Երեքդարեան պատմութիւն Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն Պալաթու, 1627-1931, Կ. Պոլիս, 1932, էջ 97)։

Արդարեւ նշանակելի է որ 1206 թուականէն աւելի հին ո՛չ մէկ յիշատակարան կը յիշատակէ այս վանքը իբր Հայ աղօթավայր կամ վանք։

Նոյնպէս բազում սրբավայրերու համար գոյութիւն ունին այս տեսակ աւանդութիւններ որոնք սակայն չեն տոկար քննադատութեան եւ պատմական փաստարկութեան, որոնք մեզի հազիւ կը հասցնեն Սելճուկեանց կրօնական ներողամտութեան շրջանին ԺԲ., ԺԳ. եւ ԺԴ. դարուն, ուր Հայք արդարեւ կը վայելէին առանձնաշնորհեալ դիրք մը, եւ կրօնական ազատութիւն՝ որ այդ շրջանակին մէջ չէին վայելած բացի 1021էն 1080 տեւող շատ վաղանցիկ շրջանին ուր Սեբաստիա, Պիզու եւ Ծամնդաւ իրենց աթոռները հաստատած էին Հայ ճորտ երեք թագաւորները՝ Սենեքերիմ Արծրունի, Կրկին Գագիկները՝ Աշոտեան եւ Աբասեան։

Սելճուկ պետութիւնը իբր վարչական սկզբունք կրօնական մոլեռանդութենէ հեռու մնալ եւ իսլամի եւ քրիստոնեային միջեւ խտիր չդնել, իրեն համար ուղղեգիծ ընդգրկած էր, եւ Հայերը՝ իբր քրիստոնեայ, այլ սակայն մանաւոր վստահութեան արժանացած տարր մը՝ աւելի մեծ բարեացակամութեան ու հոգածութեան առարկայ կ՚ըլլային, ինչպէս տեսնուեցաւ։

Քրիստոնեայք ամէն ասպարէզի եւ գործի մէջ կրնային մտնել, նոյնիսկ զինուորականութեան մէջ։ Այսպէս «յամենայն ազգաց քրիստոնէից» (Սմբատ, 119) եւ նոյնիսկ Լատիններէն (Հեթում, 38-39) վարձկան զինուորներ առնուած ըլլալը յիշուած է։

Սակայն ինչպէս կը տեսնուի քրիստոնեայ զինուորները եթէ ո՛չ ամբողջութեամբ գէթ մեծամասնութեամբ Հայեր էին, վասնզի Յոյները՝ այն պատերազմներուն մէջ մանաւորաբար, որոնք Բիւզանդական կայսրութեան դէմ կը մղուէին, վստահելի չէին։

Կիրակոս Գանձակեցի (133) Մուհամմէտ Ճելալէտտինի դէմ երեք իսլամ վեհապետներու դաշնակցաբար մղած պատերազմի մէջ կը յիշատակէ միայն Հայ եւ Լատին զինուորներու գոյութիւնը եւ նշանակելի

է որ պատմագիրը կ'ըսէ թէ «իսկ Սուլդանն զի այր բարեպաշտ էին, ոչ ապերախտ լինէին առ զօրն Քրիստոնէից, զի գիտացին թէ ի ձեռն նոցա ես զտէր զյաղթութիւն» (Նոյն, 134)։ Կայ Խոսրովի Թաթարներուն դէմ մղած պատերազմին մէջ (1243) օտար պատմիչներ (Խալիլ Էտհէմ, Գայսէրի Շէհիրի, 79) կը հաստատեն թէ Սելջուկեանց հետ կռուած են նաեւ Հայերը և Ֆրէնկները։

Իսկ զարմանալի պիտի թուի եթէ ըսենք թէ Սուլթանները աւելի կը վստահէին իրենց քրիստոնեայ գունդերուն քան թէ Թուրք զինուորներուն, որոնք շատ օգտակար չէին կանոնաւոր պատերազմի մը մէջ (Բրիտանական Համայնագիտարան):

Թերեւս առարկուի թէ Ռումի Սուլթանները՝ Թուրքերու թիւին սակաւութեան համար ստիպուած են քրիստոնեաները՝ մասնաւորապէս Հայերը զինուորագրել, սակայն ի՞նչպէս պիտի մեկնեն գոյութիւնը պետութեան բարձրագոյն պաշտօնին՝ վէզիրութեան(1) կոչուած քրիստոնեաներու, ինչպէս Խրիստափորի զոր կը յիշատակէ Միխայէլ Ասորի (444) անցողակի, առանց մասնաւոր կարեւորութիւն տալու, ինչ որ կը մղէ ենթադրել թէ ասիկա սովորական երեւոյթ մըն էր։ Թէև Խրիստափորի ազգութիւնը չէ յիշուած սակայն Յոյն մը կրնայ ըլլալ եթէ Հայ չէ, անունէն դատելով։

Իսլամ պետութիւն մը —որպիսին էր Սելջուկ Ռումի այս Սուլթանութիւնը — որ հարկադրուած էր առաւելապէս կռուիլ քրիստոնեայ Բիւզանդիոնի և կամ Խաչակրաց դէմ, որոնց պատերազմները կրօնական բնոյթ ունէին և Իսլամութեան սպառնալու հանգամանք, երբ իր բանակներուն և պետական պաշտօններուն մէջ չի վարանիր քրիստոնեաներ գործածելու, ասիկա կը նշանակէ թէ անիկա կը վստահէր իր հպատակներուն, որոնց անձնուիրութեան հաւաստիքները անշուշտ տեսած էր և որ ուրիշ բանի մը արդիւնքը չէր կրնար ըլլալ եթէ ոչ պետական վարչութեան մէջ իր ընդգրկած անխտրականութեան նշանակելի գիծին։

Երզնկայի յաղթանակէն յետոյ Սուլթանը դիմաւորող Կեսարիոյ քրիստոնէից նկատմամբ, հակառակ մահմետականներու ցոյց տուած ժանիքին, Սուլթանին ցոյց տուած համակրանքը կը հաստատէ թէ անոնք որքան հոգածու էին քրիստոնեայ տարրը չդառնացնելու։ Այս քաղաքականութեան կը պարտէին անշուշտ Սուլթանները այն առաւելութիւնը, որ քրիստոնեայ իշխանութենէ կորզուած այս երկիրներու մէջ երբեք խլրտումներ և ապստամբութիւններ չծագեցան։

Լայնախոհութիւնը որ այս պետութիւնը ցոյց տուած է քրիս-

(1) Խրիստափորը՝ դպրապետ տիտղոսով յիշատակուած է։ Վէզիր կը մեկնեմ այս բառը առնելով Դիւանի պետի իմաստով, մասնաւորապէս նկատի առնելով իրեն վստահուած շատ փափուկ պաշտօնը՝ 1162ին, երթալ Բիւզանդիոնի կայսեր զինակցութիւնը խնդրելու։ Եթէ նոյնիսկ պարզ քարտուղար մըն ալ նկատենք, անկարելի է իրեն վստահուած պաշտօնին կարեւորութիւնը աննշմար թողուլ։ Խրիստափոր զայն յաջողութեամբ գլուխ հանած է Մանուէլ կայսրէն երդում և ապահովութիւն ստանալով (Միխ. Ասորի, 445) և Գըլըճ Ասլան Բ. (1156–1193) ուղեւորած է Կ. Պոլիս և արտասովոր պատիւներու արժանացած (Նոյն և Գրիգոր Երէց, 546)։



տոնեաներու նկատմամբ նշանակելի է որ չի սահմանափակուիր միայն իրեն հպատակներուն վրայ, այլ նաեւ ոչ-հպատակ հեռաւոր երկիրներէ եկած Ֆրէնկներու՝ որոնց մասին ալ թոյլատու ոգի ունեցած է։ Այս տեսակէտով նկատելի իրողութիւն մըն է որ Իկոնիոյ Սուլթանները թոյլ տուած էին կաթոլիկ միաբանութեանց՝ մասնաւորապէս Դոմինիկեաններու առաքելութիւններ հաստատել Փոքր Ասիոյ մէջ (Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 2–3) և նոյնիսկ իրենց մայրաքաղաքին Գոնիայի մէջ կային բազմաթիւ «ֆրանկներ» ինչպէս կը հաւաստէ Ուիլեամ Ռուբրուք (տես նոյն, 25), որ հոն տեսած է Ճենովացի վաճառական մը՝ Նիկոլա որ ընկերակցութեամբ Վենետիկցի Բենեֆադիոս տը Մոլենտինոյի, մենաշնորհը առած էր պաղլեղի առեւտուրին ամբողջ Ռումի կայսրութեան մէջ (Նոյն)։

Դէպի արեւմտեան քաղաքակրթութեան այս հակումը և դէպի քրիստոնեաները բարեացակամութիւնը, Ռումի Սուլթաններու արքունիքին մէջ շատ զօրաւոր էր, վասնզի հոն միշտ քրիստոնեայ կիները գերակշիռ ազդեցութիւն ունեցած էին։ Նոյնիսկ պետութեան հիմնադիրին անդրանիկ զաւակը և երկրորդ վեհապետը՝ Գըլըճ Ասլան Իբն Սիւլէյման (1092–1107) ամուսնացած էր Յոյն զօրավարի մը աղջկան հետ։ Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1191–1193 և 1204–1211) Յոյն կին մը ունէր, իր զաւակը՝ Ալաէտտին Կայ Խոպատ Ա. (1220–1236), որ այդ Յոյն կնոջմէն ծնած էր, ունէր Հայ կին մը(1) և Ղայասէտտին Կայ Խոսրով Բ.ի երեք կիներէն երկուքը քրիստոնեայ էին, մին Յոյն քահանայի մը և միւսը՝ Վրաց թագուհիին աղջիկները։

Երբ նկատի առնենք իբր մայր և իբր կին, քրիստոնեայ այս Սուլթանուհիներու ազդեցութիւնը իրենց Սուլթան զաւակներուն և ամուսիններուն վրայ, շատ դիւրաւ կարելի է հասկնալ թէ ինչպէս Սուլթանները իրենց անձնական նախաձեռնութեամբ պետութեան մէջ կը հովանաւորէին, կը պաշտպանէին, կը չփացնէին քրիստոնեաները։ Այս բարեացակամ տրամադրութիւնն էր որ ապահովաբար ստեղծեց այն նշանաւոր զրոյցը թէ Ղայասէտտին Կայ Խոսրով Բ. խոստում տուած էր ընդունելու քրիստոնէութիւնը (Գելցեր, 410), և Իննովկենդ Դ. Պապը, միամտօրէն խաբուելով 1254 Մարտ 14ին նամակ գրեց յաջորդ Ռումի Սուլթանին, Դոմինիկեանի մը միջոցաւ, յորդորելով զայն որ քրիստոնէութիւնը ընդունի (տես Raynaldus, Annales II. 492–494, նաև Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 27)։

Իրականին մէջ քրիստոնեայ դառնալու հարց չի կար ապահովաբար այլ քաղաքականութիւն մը, որ իրապէս գործադրել պարտաւորուած էին Ռումի Սուլթանները, որոնց հպատակներուն 10էն 9ը քրիստոնեայ էին և եթէ անոնց հետ խստութեամբ վարուէին, սեղմումներ, ճնշումներ ի գործ դնէին, կրնար ընդհանուր դժգոհութիւն մը վտանգել պետութիւնը։ Լայնախոհութիւնը պետական էր և քաղաքագիտական գործ մը, ընդգրկուած պետութեան վարիչներուն, մասնաւո-

(1) Ըստ վկայութեան Սմբատ Գունդստապլի (119) այս Սուլթանը «երբ զօրացաւ... բազում զօրօք յամենայն ազգաց քրիստոնէից եւ տանկաց էառ յԱղամայ բռնէն ի Կիռ Վարդէն զբերդն Կալանորոս (հիմա Ալայա) եւ զդուստր նորա 'ի կնութիւն յոչ կամաց եւ վասն քրիստոնէութեանն չհանգեցաւ ի հետն աղջիկն»։

լապէս Սուլթաններուն կողմէ, և զանգուածը կամ խուժանը միշտ համաձայն չէր։ Այս պատճառով Սուլթաններու դէպի քրիստոնեաները ընծայած պաշտպանութիւնը, երբեմն երբեմն բռնկցուց մոլեռանդութիւնը, որ սպանեց իբր անաստուած Ռուքնէտտին Սիւլէյման Սուլթանը (1193–1204) և Ղայասէտտին Քայ Խոսրովի իշխանութեան շրջանին խմորեց կրօնական շարժում մը, որուն հիմնադիրն էր Ճէլալէտտին Րումի, կազմակերպիչը՝ Մէվլէվիներու կամ Մավլավիներու կարգին։ Ասոնք կազմեցին Տէրվիշական միութիւններ և տարածուեցան ամբողջ երկրին մէջ։ Այս զօրաւոր մարմինները, յաճախ դժգոհ ազատական սկզբունքներէն Սուլթաններուն որոնք արտօնութիւններ կը շնորհէին քրիստոնեայ վաճառականներու և յաճախակի յարաբերութիւններ կ'ունենային անոնց հետ, կ'արծարծէին իսլամական մոլեռանդութիւնը, որուն դէմ կը մաքառէին Սուլթանները, պետութեան լաւ ըմբռնուած շահերուն հասկցողութեամբ։ Այսպէս երբ Ղայասէտտին Քայ Խոսրովի առաւելագոյն չափով դէպի քրիստոնեաները ցոյց տուած յարումին համար Տէրվիշները ապստամբութիւն մը յարուցին, Սուլթանը չվարանեցաւ քրիստոնեայ զինուորներու աջակցութեան դիմել և անոնց օգնութեամբ խեղդել այս ապստամբութիւնը (Բրիտանական Համայնագիտարան)։

Ռուբրուք կը նկարագրէ նաև Թուրքերու և Թուրքմէններու զայրոյթը և հակառակութիւնը Ղայասէտտին Քայ Խոսրով Բ.ի (1237–1247) դէմ որ ամուսնացած էր երկու քրիստոնեայ կիներու հետ։

Ռուբրուք՝ կը պատմէ թէ ինչպէս «մի խումբ Թուրքեր եւ Թուրքմէններ դաւադրած էին ... սպանելու համար քրիստոնեայ կիներուն զաւակները» և ինչ որ աւելի սարսափելին է «անոնք կարգադրած էին, որ այն պարագային որ յաղթական ըլլային, պիտի ոչնչացնէին բոլոր եկեղեցիները եւ մահացնէին բոլոր անոնք, որոնք չէին համակերպիր ընդունելու մահմետականութիւնը» (հմմտ. Յովհ. Յակոբեան, նոյն, 30 և 32)։

Այս տողերը՝ որոնք անշուշտ հիմ մը ունին, բացորոշ ցոյց կու տան թէ արքունիքը որքան որ քրիստոնեաներու մօտ և բարեկամ էր, և անոնցմով լի, ժողովուրդին զանգուածը մոլեռանդ իսլամ էր և կատարեալ իսլամի մը յատուկ մոլեռանդական անհանդուրժողութիւններէն զերծ չէր։ Այնպէս որ երբեմն տխուր դէպքեր պատահած են իբր մահմետական մոլեռանդութեան արգասիք։ Այսպէս պատմութիւնը մեզի կ'աւանդէ Կեսարիոյ մէջ 1204ին պատահած Կեսարացի Թէոդորոս անուն երիտասարդի նահատակութիւնը։

Թէոդորոս Կեսարացի երիտասարդ արհեստաւոր մըն էր որ կարօտութեան միջոցին փոխ դրամ առած էր այլազգիէ մը, և պայմանաժամին չկարենալով վճարել, պարտատէրին և դատաւորին խստութենէն ազատելու համար ուրացութեան էր դիմած։ Բայց շուտով զղջալով, Կեսարիայէն փախած և Գըրշէհիր գացած էր։ Հոն պատահմամբ կը ճանչցուի Կեսարացի մահմետականէ մը և դատաւորին կը մատնուի իբրև իսլամութենէ ետ դարձող մը։ Հարցաքննութենէ յետոյ Կեսարիա կը ղրկուի, ուր էր Սուլտանը և այնտեղ աղաչանքներ, յորդորներ և խոստումներ կ'ընեն որպէսզի իսլամութիւնը ընդունի։ Թէոդորոս կը մերժէ։ Ուստի ամիս մը զայն կը խոշտանգեն և կը տանջեն։

Անանիա կաթողիկոս Սեբաստիոյ, որ Կեսարիա կը գտնուէր այն



միջոցին, Գէորգ քահանայի ձեռքով քաջալերական յորդորներէ և աղօթքէ զատ օգնութիւն մը չի կրնար հասցնել Թէոդորոսի, որ վերջապէս սուրի հարուածներով և քարկոծումով կը նահատակուի քաղաքին հրապարակին մէջ մահափայտին կապուած (տես Ազգապատում, 1598. հմմտ. եւս Յայսմաւուրք բուն օրինակի Տէր Իսրայէլի, տպ. Կ. Պոլիս, 1834, Ա. հտ. 223. Հայոց նոր վկաները (1155–1843 հրտ. Յ. Մանանդեան և Հ. Աճառեան, տպ. Էջմիածին, 1903, 85–93. Դիւան Հայոց Պատմ. Ժ. հատոր, 389–390), ճիշդ 1204 Մայիս 18ին, Երեքշաբթի օրը(1)։

Նոյնպէս նաև Յովհաննէս վրդ. Գառնեցիի մասին Կիրակոս Գանձակեցիի պատմածները (200–205) կը հաստատեն թէ երկրին կառավարութիւնը իսլամ էր իր խորքին մէջ և ինչպէս ընդունուած սովորութիւնն է, բոլոր մահմետական երկիրներու մէջ, երբեք չէր հանդուրժեր որ իսլամութիւնը ընդգրկող ոեւէ անհատ կարենայ թողուլ իր կրօնքը և յարիլ ուրիշ կրօնքի մը։ Ասիկա մահմետականաց համար մահապարտ արարք մըն էր։ Այս մասին այնքան խիստ եղած ըլլալ կը թուին Սելջուկները, որքան ուրիշ մահմետական երկիրներու բնակիչները, հակառակ անոր որ չափազանց հանդուրժող և լայնախոհ եղած են իրենց այլակրօն հպատակներուն համար։ Միայն ասով կրնայ մեկնուիլ Թէոդորոս պատանիի խժդուժ սպանութիւնը (1204) իր իսլամութենէ դարձին համար և մահուան դատապարտուիլը քահանայի մը հետ Յովհաննէս վրդ. Գառնեցիին, Այրի վանաց այս միաբանին, որուն սրբութեան և հրաշքներուն համբաւը Երուսաղէմի և Սինայի մէջ արդէն հռչակուած էր երբ «երթեալ... ընդ բազում գաւառս եւ ընդ քաղաքս, եհաս ի քաղաքն Կողոնիա (= Շապին Գարահիսար), եւ բազումք ի Թուրքաց եւ ի Տաճկաց գային առ նա եւ մկրտէին վասն սքանչելի վարուց նորա եւ բժշկութեանցն զոր առնէր» (Կիրակոս, 204)։

Ասիկա ալ նոյնքան աններելի յանցանք մըն էր որով «նախանձեցան ընդ նա պարսիկքն եւ իշխանն քաղաքին Կողոնիայ ըմբռնեաց զնա եւ զերէց մի եւ կուտեալ փայտ չոր, եդեալ զնոսա ի միջի՝ վառեաց հրով»։

Պատմիչը զայն փրկուած ցոյց կու տայ այս խարոյկէն։

Կողոնիոյ իշխանը զայն ազատ կը թողու ուզած տեղը երթալու և «նորա երթեալ ընդ բազում գաւառս, գնաց ի Հռոմկլայն առ մեծ կաթողիկոսն Հայոց Կոստանդին» Բարձրբերդցին (1221–1267) որ զայն ընդունեց պատուով և «ոչ ետ թոյլ երթալ այլ ուրեք» թերևս նոր փորձանքի մը չհանդիպելու համար(2)։

Այս երկու պատահարները՝ որոնք բացառութիւններ և արտասովոր դէպքեր չեն կրնար ըլլալ և անշուշտ՝ իրենց շատ նմանները ունէին, ինչպէս կը հաստատուի նոյնիսկ պատմութենէն, խուժանային գործեր են, և ընդհանուր հալածանքի մը բնոյթը չունին։ Պետութիւնը միշտ պաշտպանն էր քրիստոնէից որոնք շնորհիւ Սուլթաններու հովանաւորութեան, գտած էին Modus vivandi մը, որով կը յաջողէին ո՛չ

---

(1) Թուականի այս ճշդումը ըրած է Օրմանեան (Ազգապատում, 1598). Յովհաննէս Սեբաստացի, 1202 Մայիս 18 կը նշանակէ (Դիւան. Ժ. հտ. 389) սակայն կարելի չէ ընդունիլ ճշդութիւնը։

(2) Յովհաննէս Գառնեցիի վրայ գրած է նաև Դաւիթ Բաղիշեցի (ԺԷ. դարու ժամանակագիր) (տես Դիւան Հայոց Պատմ. Ժ. հտ. 43) և կը ճշդէ մահուան թուականը՝ որ է 1263)։

միայն իրենց գոյութիւնը պահել, այլ նաեւ որոշ չափով մը իրենց կրօնական կեանքին զարկ տալ, եկեղեցիներ շինել, եկեղեցական վարժութիւններ հաստատել և կրօնական հալածանքներէ զերծ մնալ։

Հայերը այս երկրին մէջ համեմատաբար աւելի բարեբախտ վիճակ մը ունեցած են, վասնզի Սելջուկեանք որ յատուկ մոլեռանդութիւն դարձուցած էին քրիստոնեաները չանհելու, Հայոց տուած էին նախապատուութիւն ո՛չ միայն իբր գործունեայ և ճարպիկ առեւտրականներ, ժրաջան և աշխատասէր երկրագործներ և յաջողակ արհեստաւորներ, այլ իբր երկրին այլազան բնակչութեան մէջ ամէնէն վստահելին։

Այնպէս որ Սելջուկեան տիրապետութեան շրջանն ալ, մինչև Թաթարներու արշաւանքը և աւերածութիւնները, Կեսարիոյ Հայերուն համար եղած է բարգաւաճման, իբր համայնք կրօնական վարչութեամբ կազմակերպման, և Յոյն մոլեռանդութեան հալածանքներէն ձերբազատման շրջան մը։

Այս համեմատաբար նպաստաւորեալ դիրքը և հանգիստը կարճ տեւեց։ Հռոմէական նմոյշի վրայ և անոր նմանութեամբ կազմակերպուած այս իսլամ պետութիւնը, որ իր սահմաններուն մէջ ապրող քրիստոնեաներու հովանաւոր և պաշտպան ոյժ մը եղած էր, մոռցնել տուաւ Բիւզանդական կայսրութեան օրերու հարկային կեղեքումները և տեսակ տեսակ չարաչահութիւնները և կողոպուտները, ինչպէս նաև հողին կապուած ստրուկներու համար ստեղծուած անհանդուրժելի կեանքը և պաշտօնատարներուն ծայրայեղ ապականութիւնները։ Ան զգուշացաւ գոնէ որոշ ժամանակ մը այն սխալներէն որոնք Բիւզանդացիք գործած էին, և վարուեցաւ իր բոլոր հպատակներուն հետ զգուշաւոր և խոհեմ քաղաքականութեամբ, ու յարգեց անոնց կրօնքը և անհատական ազատութիւնները — որքան թոյլ կու տային իրենց ժամանակին ըմբռնումները — բայց յետոյ ինքն ալ ինկաւ այն քաղաքական վրէպներուն ու մոլութիւններուն մէջ, ուր իր նախատիպը՝ Արեւելեան Հռոմէական կայսրութիւնը ինկած էր, տիրապետելու անյագ տենչով քանդելով իր արեւելեան պատուարները։ Հետեւանքը եղաւ իր ալ ընկճումը ցեղակից այլ սակայն աւելի բարբարոս Թաթարներէն, որոնք անծանօթ Ասիոյ խորերէն արշաւեցին այս պետութեան երկիրները և քրիստոնեաներու աջակցութեամբ կազմակերպուած քիչ շատ կարգաւորեալ պետութիւնը տապալեցին և կործանեցին։

## Բ.

## ՀԱՅԵՐՈՒ ԹԻՒԻՆ ԱՃՈՒՄԸ

Հայերը ինչպէս նախ քան Սելջուկեանց տիրապետութիւնը նոյնպէս նաև անկէ յետոյ, պահեցին իրենց կարեւորութիւնը անոնց երկիրներուն մէջ, թէ՛ իրենց պատկառելի թուով և թէ՛ իրենց բարոյական արժէքով։ Սելջուկեանք նոյնիսկ անոնց արտօնութիւններ և առանձնաշնորհներ տալով յաջողեցան հրապուրել ուրիշ Հայեր որ փախստականութեան, շահու և աշխատութեան համար Ռումի Սուլթանութեան երկիրները գաղթեն։ Նկատելի իրողութիւն մըն է թէ հակառակ անոր որ քրիստոնէից թիւը չափազանց շատ էր — բնակչութեան 10էն 9ը — Ռումի Սելջուկ Սուլթանները աշխատած են աւելի շատցնել, դրացի երկիրներու քրիստոնեաները հրաւիրելով և առիթ ներկայացած ատեն — ինչպէս պատերազմներու — զանոնք իրենց երկիրը փոխադրելու համար բռնական միջոցներու ալ դիմելով։

Այսպէս պատմութենէն մեզի կ'աւանդուի թէ Իկոնիոնի Մասուտ (1116–1156), Ասէտտին Գըլըճ Ասլան Բ. (1156–1191), Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1191–1193 և 1204–1211), Ասէտտին Կայ Քաուս Ա. (1211–1220) և Ալաէտտին Կայ Խոպատ Ա. (1220–1236) Սուլթանները, գրեթէ յաջորդաբար, մասնաւոր ջանք ու ճիգ գործադրած են իրենց երկրին մէջ քրիստոնեաներու թիւը բազմացնելու համար, ամէնը իրենց ըմբռնումին և դատողութեան համաձայն մէկ մէկ միջոց կիրարկելով։ Առաջինը անոնց Մասուտ, ինչպէս կը տեսնուի չի վարանիր բռնական միջոցներու դիմելու, այնպէս որ երբ Մարաշի վրայ կը յարձակի և Ճօսլին Լատին իշխանը՝ երկիրը անպաշտպան թողլով ամրոցներէն մէկը կ'ապաստանի, Սուլթանը ուրիշ կերպով փաս չկրնալով հասցնել «որոյ ճարակ արարեալ զորս եգիտ յաշխարհի եւ բազում այն էր որ խաբէութեամբ երդնուին յանուն մեծին Աստուծոյ եւ իջուցանէին յամրոցաց զքրիստոնեայսն՝ **զերի վարեալ զամենեսեան**» կը դարձնէ «անդրէն զերեսս իւր տանելով զառեալ գերեալսն յաշխարհն իւր» (Գրիգոր Երէց՝ շարունակող Ուռհայեցւոյն, 501)։

Ճօսլին զայն հետապնդելու համար Հայոց Գրիգոր Տղայ կաթողիկոսին (1113–1166) եղբօրը և Կարկառայ տէր (ճորտ-իշխան) Վասիլ Պահլաւունիին պաշտօն կու տայ։

Իկոնիոնի Սուլթանին զօրապետը Խարա-Ասլան՝ որ Խարբերդի կողմերուն կուսակալն էր «ի վերայ անկեալ զօրացն քրիստոնէից եւ ձերբակալս արարեալ զամենեսեան իբրեւ ոգիս չորս հարիւր, ըմբռնեալ եւ զՎասիլն ... եւ տարեալ առաջի մեծի դղեկին Կարկառայ — քանզի անդ էին կինն եւ որդիք Վասիլին — եւ առեալ երդումն հաւատարիմ յամիրայէն վասն կալեալ քրիստոնէից զօրացն զոր ըմբռնեցին, զի **տարցեն զնոսա խաղաղութեամբ յերկիրն իւրեանց առանց դաւ ինչ գործելոյ նոցա**։ Զոր բռնաւորն յաղագս սիրոյ մեծի աւանին ոչինչ յապաղեաց նմա, եւ երդմամբ զամենեսեան ի ձեռն հաւատարիմ զօրաց իւրոց առաքեաց մինչեւ ի Սամոսատ։ **Եւ զիշխանն զՎասիլ ընդ իւր տարեալ յերկիր իւր մեծաւ փառաւորութեամբ եւ տուեալ երկիր որպէս սիրելի եղբօր իւր**» (Նոյն)։

Մասուտի յաջորդը և իր որդին Ասէտտին Գըլըճ Ասլան Բ. իր հօրը քաղաքականութիւնը կը շարունակէ, սակայն բռնական միջոցներու հետ սիրաշահող կերպերն ալ կիրարկելով։ Ան ամէն կողմ իր պաշտօնատարներուն կը հրահանգէ «քաղցր կամօք» նայիլ քրիստոնէից (Գրիգոր Երէց, 522), այնպէս որ ասիկա օրինակ մը կ'ըլլայ նոյնիսկ դրացի ամենամոլեռանդ իսլամ վեհապետներու որ իրենք ալ քաղցրութեամբ վարուին անոնց հետ(1)։

---

(1) Ժամանակակից պատմագիրը՝ Գրիգոր Երէց օրինակի համար կը պատմէ թէ երբ Թլպաշարի բնակիչները անձնատուր կ'ըլլան Հալէպի մոլեռանդ Սուլթանին՝ Նուրէտտինի, անիկա զանոնք ազատ կը թողու երթալու անփաս ուր որ կ'ուզեն։ Պատմագիրը կ'ըսէ «արար նոյնպէս եւ Մասուտ Սուլտանն եւ Մելէք որդի իւր, այսպէս արարին վասն սիրոյ աշխարհացս, որ դիւրաւ առաւ ի քրիստոնէիցս եւ ոչ եթէ ի հաւատոց իւրեանց կամ ի սիրոյ զոր ունէին առ քրիստոնեայքս» (506)։

*Գրիգոր Երէց, Մաղաքիա և Դըլըճ Ասլան Բ.ի յաջողութեան գաղտնիքը կը կարծէ թէ իրենց յանձնուած քրիստոնեաներուն փառս չհասցընելն է, և կը նկարագրէ մասնաւորապէս Դըլըճ Ասլան Բ.ի քրիստոնեաներու նկատմամբ ցոյց տուած բարեացակամութեան նշան, մի քանի պարագաներ, որոնց ամէնէն նշանակելին է Պեհեսնիի գրաւման* (1157) *առեն իր ցոյց տուած հոգածութիւնը։*

*Պեհեսնիի անարժան տէրը* «ելեալ ի խրատուէ Սուլտանին իւրոյ որ վասն քաղցր կամօք նայելոյ ի քրիստոնեայս, նա առաւել եղեւ ի պատուհաս արկանել նախ զպատուական քահանայս եւ սարկաւագունս եւ զպիտանի տանուտէրս եւ զայլ հասարակաց քրիստոնեայս միապէս չարչարէր, եւ ծանուցուցանէր զնորա կակից բնակչաց անուանի Պեհեսնոյ» (522)։ *Այս պատճառով* «զանձինս ի մահ եղեալ» *օգնութիւն կը խնդրեն Սուլթանէն յուսալով որ* «թերեւս կարասցեն դաւ գործել չարայուս բռնաւորին» *սակայն քրիստոնեայ մատնիչի մը սխալ տեղեկատուութիւնը աւելի անտանելի կը դարձնէ իրենց վիճակը, և կը դիմեն թշնամի բանակը որ եկած էր բերդին դէմ։*

*Զօրավարը* «առեալ ... զամենեսեան զարս եւ զկանայս, զծերս եւ զտղայս, թողլով իւրեանց յօժարութեամբ զինչս եւ զստացուածս հայրենի ժառանգութեանս յոր ի նին եւ յերկար ժամանակաց ծնեալ եւ սնեալ էին եւ 'ի բարեպաշտ էրիւանց պահեալ իբրեւ որդի սիրելի, տարեալ զնովանունն եւ զփափկասէր առս յանախորժ եւ յանհանգիստ երկրի բնակեցուցանէր, մինչեւ զմտաւ ածեալ Սուլտանին զաւերումն աստուածապահ բերդին Պեհեսնոյ, զտառապանս քրիստոնէից, ըստ իմաստութեան իւրոյ հնարիւք զաւերումն ի յաւանէն» (523–524) *արգահատանք ցոյց կուտայ և արտօնութիւն՝ դառնալու իրենց տեղերը այնպէս որ* «ապա սկսան մի ըստ միոջէ գալ բնակիչք տեղւոյն ի քաղցրութենէ Սուլտանին եւ լցաւ քաղաքն ամենայն՝ թափուր եւ ունայն ի գոյից իւրոց» (524)։

*Նոյն Սուլթանին իշխանութեան օրերուն և նոյն շրջանին Գրիգոր Երէց կը խօսի նաև Կիսոն*(1) *քաղաքին մասին եւս, որուն տէրը՝* «կարգեալ յարքայէն տեառն եւ կողմնապահ» *անկարող դիմադրելու քաղաքին վրայ խուժողներուն, կը հանէ քաղաքէն* «զպատուական քահանայս, զփառաւոր եւ զպիտանի տանուտէրս եւ զամենայն մարդիկն՝ զամենեսեան առ հասարակ, մինչեւ ոչ մի այր մնացեալ ի ներքս բայց միայն զկանայս եւ զտղայս թողլով ի քաղաքն»։ *Սուլթանէ այս բոլոր քաղաքէն ելլողները կը պահէ և անոնց կու տայ* «բնակութիւն փոխանակ բարձրայարկ ապարանից եւ տանց իւրեանց՝ գեօղք եւ վանորայք»։

*Իսկ անոնք որ* «ոչ կարող էին հեռանալ, ի հովանի ծառոց եւ ի պատից նստեալ դեգերէին, անբան եւ անգործ՝ ակն ունելով սրոյ եւ գերութեան եւ յայս երկիւղէ մոռանային զպանդխտութիւն եւ զանհանգիստ կեանս իւրեանց» (524–525)։

*Հետաքրքրական է որ պատմագիրը կը յաւելու թէ* «Եւ եղեւ երկարումն այս մեծի տառապանացս սկսեալ ի մարտի ամսոյ մինչեւ ի Յուլիս ամիս եւ ի գալ մեծի Սուլտանին (= *Դըլըճ Ասլան Բ.*) մինչեւ ի Բերդուսն, ապա խաղաղացաւ երկիր բնակելով մարդկան ի տունս իւրեանց» (525)։ *Ինչ որ կը նշանակէ թէ իր տիրապետութիւնը կը բերէր խաղաղութիւն և անդորրութիւն և քրիստոնեայ բնակիչներուն ապահովութիւն կը*

(1) *Պատմագիրը* «որ թարգմանի վայելուչ» *կ'ըսէ։ Կիսոն՝ արդեօք Քեսո՞ւնն է։*



*ներշնչէր, վասնզի ինչպէս տեսնուեցաւ արդէն, Դըլըճ Ասլան Բ.* (1156–1193) *Սելջուկ վեհապետներու մէջ անոնցմէ մէկն է որ ամէնէն աւելի քրիստոնեաներու նկատմամբ բարեացակամ եղած է։*

*Արդէն տեսնուեցաւ (տես վերը*, 501–502) *թէ ինչպէս Դըլըճ Ասլան Բ. և Դանիշմանդ Եաղուպ Ասլան* (1143–1165) *իրարու ձեռքէ կը կորզէին Լիկանտոնի քրիստոնեաները, և զանոնք ոչ-գերութեամբ իրենց երկիրները կը փոխադրէին։*

*Նոյնպէս իր միջամտութեան արդիւնք պէտք է համարել և ո՛չ թէ հրաշքի —ինչպէս կ'ուզէ հաւատացնել Միքայէլ Ասորի* (482–483)*— Մալաթիոյ ամիրային՝ ընթացքին փոփոխութիւնը։ Ան կը պատմէ թէ Մալաթիոյ քրիստոնեայ բնակիչները* «ի չարութենէ եւ ի խիստ բարուց ամիրային իւրեանց՝ որ մնացեալ էր յազգէն Դանեմանայ» *և սոսկէն սաստիկ նեղութեան մէջ էին, 1179ին, սակայն իբր թէ քրիստոնեաներու ապաշաւին հետեւանքով Ամիրան* «զղջացաւ ի գործս իւր եւ առաքեաց առ Սուլտանն (Գըլըճ Ասլան Բ.) եւ առ ի նմանէ զանձս եւ ետ ի նա զՄելտինի եւ ինքն ել եւ գնաց 'ի Խարբերդ եւ եղեւ մեծ դիւրութիւն քրիստոնէից եւ առատութիւնս հացի եւ ամենայն իրաց ընդարձակութիւնս»։ *Ինչ որ կը նշանակէ թէ քրիստոնեայք օգնութիւն և նպաստ ստացած էին Դըլըճ Ասլան Բ.էն։ Այս ուղղութիւնը իր յաջորդներուն կողմէ ալ շարունակուած է կանոնաւորապէս։*

*Ալայէտտին՝ ամէնէն երկրաշէն վեհապետը այս հարստութեան, չափազանց մեծ կարեւորութիւն ընծայած է քրիստոնեաներու և անոնց թիւը, իբր ճարպիկ և գործունեայ տարր մը, շատցնելու համար մասնաւոր աշխատանք տուած։ Ասոր առաջարկած նպաստաւոր պայմաններէն Յունաց հպատակները գրաւուելով մեծ թուով կը գաղթէին անոր երկիրը (Գելցեր*, ?81)։ *Գերման բիւզանդագէտը կը յարէ թէ* «բնական է այդ ողորմելիները դառն կ'զգային որ խաբուած են եւ աւելի ճնշման տակ կ'ստանային իրենց դաւաճանութեան արժանի վարձատրութիւնը» *(Նոյն), սակայն առ այս փաստը կը պակսի և կարծես թէ աւելի հակառակը հաստատող երեւոյթներ կը տեսնուին, քանի որ, ինչպէս տեսնուեցաւ, Հայ և օտար պատմիչներու տուած տեղեկութիւններէն, քրիստոնեայք քիչ շատ տանելի կեանք մը ունէին Սելջուկեան Ռումի կայսրութեան մէջ, ուր հալածանք՝ կրօնական նպատակով՝ գոյութիւն չունէր կամ գրեթէ չէ յիշուած, և Սուլթանները իրենք՝ անձնապէս պաշտպանած են քրիստոնեայ զանգուածները իսլամ մոլեռանդութեան դէմ, որ միշտ անհանդուրժող եղած է, և անոնց տուած են մեծ կարեւորութիւն։*

*Վաճառականներու և մշակներու մասին իսլամ վեհապետներու հոգածութեան փաստը կը հայթայթէ նաև Թագիէտտին Ահմէտ Մագրիզիի շնորհիւ մեզի հասած դաշնագրի մը բնագիրը*(1) *որ կնքուած է 7 Մայիս 1285ին ընդմէջ Կիլիկիոյ Լեւոն Գ. Հայոց թագաւորին* (1270-1289) *և Եգիպտոսի Մեմլուքեան Սուլթան Գալաուն էլ Մելէք Մանսուրի* (1279–1290) *որ ինքզինքին կու տար գերիշխան և պաշտպան վեհապետի*

(1) *Հայ թարգմանութիւնը հրատարակուած* Բանասէր, 1902, 69–79. Quatremère*ի Ֆրանսերէն թարգմանութեան վրայէն՝ բնագիրին հետ բաղդատութեամբ։*

հովեր հանդէպ բոլոր իսլամ տէրութեանց, որոնց շարքին մէջ էր նաև Ռումի Սուլթանը (տես Բանասէր, 1902, 73) որուն ի նպաստ քանի մը տրամադրութիւններ կը տեսնուին դաշնագրին մէջ։

Այս դաշնագրով Լեւոն Գ. յանձն կ'առնէր ազատ անցք տալ իսլամ երկիրներ երթեւեկ ընող վաճառականներուն և «իր երկրին մէջ» գտնուող «Ռումի երկրին եւ Սուլթանի պետութեան պաշտպանող մեծերը ...որկել ... Սուլթանին երկիրը» (Բանասէր, 1903, 77), սակայն ինչպէս Մագրիզի կը յարէ Լեւոն Գ. յետոյ չէ ուզած Գարամանի իշխանին և Ռումի Սուլթանին հպատակներէն մէկ մասը արձակել, սա պատճառաբանութեամբ թէ անոնք իր հպատակներէն շատ մը անձեր բանտարկած կը պահէին իրենց երկրին մէջ, թէ անոնք իր թշնամիներն էին որոնց դէմ միշտ պատերազմ ունէր։ Մասնաւորապէս Ռումի երկրին բնակիչներուն համար կ'առարկէր թէ անոնք անհաւատներուն՝ այսինքն Թաթարներու հպատակած էին, «բայց, կ'ըսէ Մագրիզի, մեր տէրը՝ Սուլթանը պատասխանեց. «իմ պարտքս է պաշտպանել ամէն իսլամներու շահը, անոնք չունին ինծմէ զատ վեհապետ մը որ կարենայ խորտակել իրենց շղթան եւ կռուիլ իրենց թշնամեաց դէմ...» (Բանասէր, 1903, 79)։

Եւ անշուշտ Լեւոն Գ. համակերպած պէտք է ըլլայ։

Այս բոլորը ցոյց կու տան թէ արդարև Ռումի Սուլթանները մասնաւոր հոգածութիւն մը ունեցած են քրիստոնէից նկատմամբ և անոնց թիւը շատցնելու համար աշխատած՝ անշուշտ օգտուելու համար անոնց շինարարութենէն ու գործունէութենէն։

Եւ նկատելի է որ այդ քրիստոնեաները մեծ մասամ Հայեր էին, վասնզի նախ մեր պատմագիրները, որոնք կը խօսին հազարաւոր տեղափոխուածներու վրայ, քրիստոնեայ երբ կ'ըսեն առ հասարակ Հայերը կը հասկնան և երկրորդ՝ այն գաւառները (Լիկանտոն, Ճահան, Ալպիսթան) որոնցմէ կը բերուէին այս գաղթականները վաղուց հայաբնակ էին։ Հետեւաբար պարզ է թէ այդ սովորաբար ոչ-գերութեամբ տարուած քրիստոնեաները որոնք իրենց ստացուածքներուն վրայ կը բնակեցնէին Սելջուկները և նոյնիսկ հողեր կու տային, եթէ ոչ ամբողջովին գէթ ստուար մեծամասնութեամբ Հայեր էին։ Այդ Հայ գաղթականները կը հաստատուէին պետութեան զանազան մասերուն մէջ, բայց մասնաւորապէս անոր կեդրոնին և երկու գլխաւոր քաղաքներուն՝ Գոնիայի և Կեսարիոյ շրջանակները։

Այսպէս Ռումի Սուլթանութեան շրջանին բաւական թուով Հայեր հաստատուած են Կեսարիոյ, Տիանայի (Նիկտէի և Պօռի կողմերը) (տես Միսուան, 174-176), Լարանտայի (= Գարամանի) (նոյն, 292-296), Գոնիայի (տես Արեւելք, թ. 4219 և 4274. Մանզումէ, թ. 1722. Բնաշխարհիկ Բառարան, 523) և այլ մերձաւոր շրջանակներու մէջ։

Ռուբինեանց իշխանութեան սահմանակից այս հողամասերու մէջ հաստատուած Հայերը մասամբ, հաւանօրէն Կիլիկիայէն՝ Տաւրոսի կիրճերէն անցնելով ինքնաբերաբար եկած են, իսկ մէկ շատ կարեւոր մասն ալ այս «ոչ-գերութեամբ» այլ սակայն բռնի, Մարաշէն, Սամոսատէն, Ալպիսթանէն, Ճահանէն և այլ փոխադրուած Հայերն են, որոնց ի՞նչպէս տեղափոխուած ըլլալը բացատրուեցաւ։ Այս տեսութեան ուժ կու տայ մասնաւորապէս Գոնիայի Հայոց մէջ ապրող աւանդութիւն մը որուն համաձայն անոնք գաղթած էին ԺԲ. դարուն Մարաշի և Սամոսատի կողմերէն։



Նոյնպէս աւանդութիւններ կը լիկեան ծագում կու տան Արգէոսի հարաւային ստորոտը հաստատուած Հայ գիւղերուն, ինչպէս Էվէրէկի, Ֆէնէսէի և այլն։

Կեսարիա եւս այս շրջանին պէտք է ընդունած ըլլայ Հայ թարմ արիւն, և քաղաքին և իր շրջականերուն մէջ Հայոց թիւը այս ժամանակամիջոցին պէտք է կարեւոր աճում մը ունեցած ըլլայ, և ինչպէս նաև բարգաւաճ միճակ մը, շնորհիւ Ռումի Սուլթաններուն մասնաւոր պաշտպանութեան։

Սակայն Կեսարիա Թաթարական արշաւանքներուն առաջին հարուածները ընդունող քաղաքներէն մէկն ըլլալով, բնակչութեան կարեւոր կորուստ մը ունեցած է, վասնզի ինչպէս տեսնուեցաւ (տես վերը, 515) 1243ին անոնք անձնատուր չեղան և Թաթարները «առեալ բռնութեամբ ի սուր սուսերի մաշեցին զբնակեալսն»։

Նոյնպէս 1256ին Կեսարիա, ուրիշ բազմաթիւ քաղաքներու հետ կոտորուեցաւ Թաթարներէն։

Ասոնք պատճառ եղան անշուշտ որ Կեսարիոյ Հայերը փայլուն շրջան մը բոլորելէ և թուով բազմանալէ և աճելէ յետոյ, Ռումի Սուլթանութեան վերջին օրերուն, թէ՛ թուով և թէ՛ նիւթապէս և թէ՛ բարոյապէս տուժէին և անշքացման մատնուէին։

Գ.

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ

Կրօնական ազատութիւնը, որ Սելջուկ պետութիւնը ապահոված էր իր հպատակներուն, տեսակ մը հաւասարակշռութիւն հաստատելով և թոյլ չտալով որ մէկը միւսը հալածէ, Հայերու համար մեծապէս քաջալերական էր։ Այնպէս որ հոն ուր Բիւզանդական մոլեռանդութիւնը նոյնիսկ Հայ եկեղեցւոյ ժամաձայնը արգիլած էր, Հայ եպիսկոպոսական աթոռներ երեւան եկան, այսինքն Եկեղեցական կանոնաւոր վարչութիւն մը ստեղծուեցաւ։ Երբեմն Եկեղեցւոյ տիեզերականութիւնը և միութիւնը և յետոյ օրթոտոքս պետական Եկեղեցւոյ աններողութիւնը թոյլ չէր տուած որ Հայ Եկեղեցին ունենար իր անջատ կազմակերպութիւնը Հայերով այնքան առատ այդ երկիրներուն մէջ, որոնցմէ Արաբներու տիրապետութեան ենթարկուած մասերուն մէջ միայն կը տեսնենք ոչ հաստատուն կերպով մի քանի Հայ եպիսկոպոսական աթոռներու գոյութիւնը։

Իսկ մշտատեւ Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող շրջանակներու Հայերը՝ ստիպուած էին Յոյն եպիսկոպոսներու հպատակիլ և ակամայ յունադաւան կղերին ձեռքը մնալ։ Սակայն այս կացութիւնը տեւական չէ եղած, վասնզի տեղ տեղ կը հանդիպինք հայածէս անջատ եպիսկոպոսութիւններու որոնց ինչպէս գոյութիւն առած ըլլալը անյայտ կը մնայ։ Սակայն բացայայտ է որ Եփրատէն արեւմուտք երբ Հայ գաղթականները այնքան մեծ թիւի մը կը հասնէին, Հայ կաթողիկոսները չէին կրնար անտարբեր հանդիսատեսներ ըլլալ

անոնց Բիւզանդական կղերին ձեռամբ օրթոտոքսացման և նոյնիսկ հին ատենէն սկսեալ ջանքեր ըրած են Փոքր Հայքի և մերձակայ նահանգներու մէջ հաստատելու Հայ եպիսկոպոսական աթոռներ, որոնց յիշատակութեան կը հանդիպինք պատահօրէն։ Այսպէս կը տեսնենք թէ, Սեբաստիոյ և Լարիսայի մէջ Ժ. դարուն գոյութիւն ունէին Հայ եպիսկոպոսութիւններ։ Սակայն չենք գիտեր թէ անո՛նք կանոնաւոր և ճանչցուած և ազատօրէն իրենց հեղինակութիւնը կիրարկող Եկեղեցւոյ մը իշխանութիւննե՞րն էին, երբ հալածանքը միշտ գոյութիւն ունէր օրթոտոքս Եկեղեցւոյն կողմէ և այս առթիւ է որ միայն կը ծանօթանանք անոնց գոյութեան (տես Ստեփանոս Ասողիկ, տպ. Բարիզ, 1859, էջ 188-189. նաև վերը, 376)։

Ենթադրելով իսկ թէ 986էն շատ հին եղած չըլլայ այս անդրեփրատեան երկու քաղաքներու մէջ գոյութիւն ունեցող Հայ եպիսկոպոսութիւններուն հաստատութիւնը, սակայն վերջապէս անուրանալի է որ անոնք գոնէ որոշ ատենէ մը ի վեր գոյութիւն ունէին։ Հաւանական է ենթադրել թէ Ժ. դարուն Սեբաստիոյ և Լարիսայի հետ միաժամանակ Լիկանտոնի կամ Խարբերդի և Մալաթիոյ մէջ —որոնք կը գտնուէին դէպի աւելի արեւելք, Մայր-Հայրենիքի մօտ— պէտք է ունեցած ըլլանք եկեղեցական-վիճակային վարչութիւններ կամ եպիսկոպոսներ, միայն թէ դժբաղդաբար հաստատող յիշատակարաններ կը պակսին։ Լիկանտոնի շրջանակին մէջ սակայն վանքի մը շինութիւնը Անանիա Մոկացի կաթողիկոսի (946–968) ատեն, ինչպէս կը հաստատէ Ասողիկ (161. Զամ. Բ. 824), և Մալաթիոյ երկար ատեն իսլամ տիրապետութեան ենթարկուած ըլլալը, մեզի ենթադրել կու տան թէ պէտք է հոն տեղերն ալ վիճակային կազմակերպութիւններ գոյութիւն ունեցած ըլլան, կամ եթէ մինչեւ այն ատեն չէին ունեցած, այդ դարուն ունենային, վասնզի նոյնիսկ Վասիլի օրով գործադրուած հալածանքներէն յետոյ երբ Բիւզանդական պետութիւնը ներքին ըմբոստութիւններով կը քայքայուէր, մանաւանդ Վարդ Սքլերոսի հայկական բնոյթ ունեցող ապստամբութիւններով, Խաչիկ Ա. Արշարունի (971–992) կաթողիկոս կը ձեռնադրէ «Եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց եւ ի Տարսոն Կիլիկեցւոց եւ ի Սուլընդայ(1) եւ յամենայն գաւառսն յայնոսիկ» (Ասողիկ, 249)։

Շատ բացորոշ կը տեսնուի թէ Եփրատէն անդին Սեբաստիա, Լարիսա, Մելիտինէ, Լիկանտոն, և այլ, կամ աւելի ճիշդ, Փոքր Հայք և Հայացած Կապադովկիան որոնք Հայ կաթողիկոսներու հոգեւոր շրջանակին սահմանը կը ներկայացնէին, դէպի արեւմուտք և դէպի հարաւ նոր ընդարձակութիւն մը կ'ստանային և Ասորիքի (Անտիոք), Կիլիկիոյ (Տարսոն) և Իսաւրիոյ Հայերն ալ կը կապուէին Հայ կաթողիկոսներուն։

Մինչեւ այդ թուականը եթէ Կեսարիա չէր ունեցած իր եպիսկոպոսը, գէթ Խաչիկ Ա. Արշարունիի այս կարգադրութենէն յետոյ պէտք էր որ ունեցած ըլլար իր Հայ եպիսկոպոսները, որոնք մեզի ծանօթ չեն դժբաղդաբար։

---

(1) Սուլընդան, Օրմանեան կը նոյնացնէ Սելինունտիայի հետ (այժմ Սելենտի) որ էր երբեմն Տրայանուպոլիս և գլխաւոր քաղաք Իսաւրիոյ և Նաւահանգիստ։



Հոս աւելորդ չըլլայ ըսել թէ Բիւզանդական երկիրներու մէջ հաստատուած այս աթոռները շատ հաւանական չէ որ դարձեալ տեւական եղած ըլլան, վասնզի պարբերաբար հալածանքները սաստկացած են և այս պատճառով իսկ այդ աթոռները «Երերուն կացութիւն մը ունէին, երբեմն ընդդիմանալով եւ երբեմն համակերպելով, բայց աւելի արտաքին կերպով եւ ոչ երբէք հիմնապէս իրենց Եկեղեցիէն բաժնուելով» (Ազգապատում, էջ 1137)։

Յաջորդ դարուն նշանակելի է որ այդ հայաշատ շրջանակներուն մէջ, որոնք տակաւին Բիւզանդական կայսրութեան իշխանութեան տակ էին, Հայ ճորտ թագաւորութիւնները կը կազմակերպուէին, Սեբաստիա, Ծամնդաւ և Պիզու կեդրոններով, և բնական է Հայ եկեղեցիի դէմ հալածանքը կը դադրի, թէև անուղղակի կը շարունակուի զայն օրթոտոքսութեան ձուլելու ջանքերը, և Հայ կաթողիկոսութիւնը ջնջելու փորձերը, (տես վերը, 444–446) որոնք ապարդիւն դարձնելու համար կ'աշխատին Հայ նախկին թագաւորները, որոնց իշխանութեան սահմաններուն մէջ Հայ Եկեղեցւոյ վարչութեան համար յատուկ կազմակերպութեան մը արգելք չի կար։ Արդարեւ Սենեքերիմի տեղափոխութենէն (ԺԱ. դարու սկիզբ) անմիջապէս յետոյ Սեբաստիա կ'ունենայ իր եպիսկոպոսները որոնց աթոռանիստն էր Ս. Նշանի վանքը՝ կառուցուած նոյնիսկ Սենեքերիմէն։ Այս եպիսկոպոսները անխափան պահած են իրենց գոյութիւնը մինչեւ այս ճորտ թագաւորութեան ջնջումը։ Նոյնպէս Գագիկ Աշոտեան Բագրատունի շինած էր Ս. Խաչ վանքը Պիզուի մէջ, որ հաւանօրէն իր կարգին պէտք էր կեդրոն մը եղած ըլլար իր երկիրներու Հայոց վրայ իրաւասութիւն ունեցող եպիսկոպոսութեան մը որուն յիշատակութեան չենք հանդիպած դժբախտաբար։

Իսկ Գագիկ Աբասեան Կարսի երբեմնի թագաւորը տեսանք արդէն (վերը, 446-447) որ ինչպէս յաջողեցաւ 1066ին իր նստոցին՝ Ծամնդաւի մէջ արտօնութիւն ձեռք բերել բնակեցնելու Ամենայն Հայոց կաթողիկոսը, որ անկէ առաջ (1062–1065) կը բնակէր Թաւբլուր (Տարէնտէի և Աշոտի մօտերը վանք մը) որ իբր բնակավայր որոշուած էր իրեն Յոյն կայսեր կողմէ։ Իսկ Ծամնդաւէն յետոյ Մուտառռուսուն (Կէմէրէկի մօտ) եղաւ աթոռատեղին Ամենայն Հայոց կաթողիկոսին։ Այսպէս ուրեմն Կապադովկիոյ Հայ ճորտ թագաւորներն եղան թէ՛ պաշտպանները Ամենայն Հայոց կաթողիկոսներուն և թէ՛ կազմակերպողները Հայ Եկեղեցւոյ ինքնուրոյն վարչութեան Փոքր Հայքի, Կապադովկիոյ և Արեւելեան Փոքր Ասիոյ, Կիլիկիոյ և Ասորիքի մէջ։ Սակայն 1083ին երբեմնի Հայ այս ճորտ իշխանութիւնները ջնջուեցան և երկիրը Դանիշմանդի իշխանութեան ենթարկուեցաւ, ասոնցմէ միայն այդ իշխանութեան մայրաքաղաքին Սեբաստիոյ եպիսկոպոսն էր որ կրցաւ իր գոյութիւնը պահել և թերեւս իբր Դանիշմանդեան իշխանութեան ենթարկուած Հայերու հոգեւոր պետը ճանչցուիլ և բոլոր սահմանին մէջ գտնուող Հայոց վրայ հեղինակութիւն բանեցնել։ Այս աթոռը անընդհատ շարունակուեցաւ մինչեւ Դանիշմանդներու իշխանութեան վախճանը և Սեբաստիոյ Սելջուկ Ռումի Սուլթաններու տիրապետութեան ենթարկուիլը։

Ռումի Սուլթաններու ներողամիտ և լայնամիտ քաղաքականութիւնը քաջալերած կը թուի Հայերը պետութեան ամէն մասերուն մէջ

ստեղծելու եկեղեցական կանոնաւոր կազմակերպութիւն մը, հաստատելով Հայ եպիսկոպոսութիւններ, հաւանօրէն մեծ մասամբ բոլորովին ի նորոյ և բոլորովին անջատ յունականներէն որոնք իրենց գոյութիւնը կը պահէին, ինչպէս կարելի է մակաբերել, Մարքօ Փօլօյի(1) խօսքերէն որ «Թիւրքմէնիայ»ի երկրին վրայ խօսած ատեն անոր սահմաններուն մէջ «եպիսկոպոսական թեմերու» գոյութիւնը կը հաստատէ (տես Յովհ. Յակոբեան, «Ուղեգրութիւններ», Երեւան, 1932, էջ 46):

Արդարև Սեբաստիոյ, Լարիսայի, Խարբերդի և Մալաթիոյ վաղեմի աթոռներէն զատ, Սելջուկ Ռումի Սուլթաններու իշխանութեան ներքև, գրեթէ անոնց տիրապետութեան հաստատութենէն անմիջապէս յետոյ, առաջին անգամ ըլլալով

1174ին՝ **Տիւրիկի** (Տիվրիկի),

1179ին՝ ԿԵՍԱՐԻԱՅ, **Ծոփաց** (= Խարբերդ) **Չմշկածագի**, **Մալաթիոյ**, **Նէոկեսարիոյ** (= Նիկսար), **Տարենտէի**(2),

1253ին՝ **Առաբկիրի**,

1307ին՝ **Թօգաթի**, **Ամասիոյ**, **Ծամնդաւի**(3), **Տիանայի** (= Նիկտէ – Դօռ),

յատուկ Հայ եպիսկոպոսներու անուններու յիշատակութիւնը կը տեսնուի ինչ որ կը մղէ մտածել թէ քրիստոնեաներու տրուած կրօնական ազատութիւնը և Յունաց հալածանքներուն դադրիլը գլխաւոր պատճառներէն մին էր Հայոց յատուկ եպիսկոպոսական աթոռներուն այս կազմակերպութեան որ իբր երեւոյթ մը և չափազանց նշանակելի ու ուշագրաւ իրողութիւն մը, անտեսել կարելի չէ, միայն բնաւ կարելի չէ պնդել թէ այս եպիսկոպոսական աթոռները միայն այս թուականներուն հաստատուած են, այլ ընդհակառակը կրնայ մտածուիլ թէ աւելի կանուխ ալ գտնուած են եպիսկոպոսներ այս քաղաքներուն մէջ, միայն թէ անծանօթ կը մնան, մինչ այս թուականներով եպիսկոպոսներու գոյութիւնը մեզի ծանօթ է յիշատակարաններէ և աւելի կարեւորը ան է որ անընդմիջաբար այլեւս շարունակուած են:

Նոյնքան ուշագրաւ դէպք մըն է Սելջուկ Ռումի Սուլթան Ռուքնէտտին Սիւլէյմանի (1193–1204) և Ղայասէտտին Կայ Խոսրով Ա.ի (1204–1219) քաջալերութիւնը իրենց երկիրներու յատուկ մասնաւոր կաթողիկոս մը ունենալու ձեռնարկի մը որ ըրաւ Սեբաստիոյ Հայ եպիսկոպոսներէն մին՝ Անանիա Սեբաստացի որ 1186էն սկսեալ կը գրաւէր Սեբաստիոյ Հայոց եպիսկոպոսական աթոռը, և որ հիմնուելով իր Պետրոս Գետադարձի ազգականներէն ըլլալու հանգամանքին վրայ (Դիւան Հայոց Պատմ. Մանր Մատենագիրք, էջ 388) Գրիգոր Զ. Ապիրատ կաթողիկոսի մահէն (1202) յետոյ, Պահլաւունի ցեղէն ժառանգ մը չգտնուելէն օգուտ քաղելով, կ'ուզէր Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռ բարձրանալ, և ունէր կուսակիցներ:

Սակայն Յովհաննէս Զ. Սսեցի՝ մականուանեալն «Մեծաբարոյ» երբ արքայական պարտադրութեամբ աթոռը կը գրաւէ և կը հաստատուի

---

(1) 1271 – 1295 թուականներուն ականատեսի վկայութիւն մը:

(2) Տարէնտէ թերեւս պէտք է նկատել Թաւբլուրի կաթողիկոսարանին (1063-1065) շարունակութիւնը:

(3) Նոյնպէս կարելի է կաթողիկոսարանին (1065-1072) շարունակութիւնը համարել:



Հռոմկլայ, Անանիայի կուսակիցները «սկսան քրթմնջել ի ժողովրդեան, թէ ոչ հաւանութեամբ եպիսկոպոսացն եղեւ ընտրութիւն Յովհաննու, այլ ընդ հաճոյս թագաւորին, ուստի այսու վստահութիւն առեալ Անանիայի եւ միաբանեալ ընդ իւր զեպիսկոպոսունս եւ զվանականս Փոքուն Հայոց, մանաւանդ զբնակիչսն Սեբաստիոյ եւ **Կեսարիոյ**՝ խորհեցաւ ի գլուխ տանել զկամս իւր, վասնորոյ երեւելի պատարագօք հանեցուցեալ զՍուլտանն մեծ ամիրայն Իկոնիոյ որ տիրէր այնոցիկ կողմանց, եւ հրամանաւ նորին նստաւ իբր առանձին կաթողիկոս աստ ի Սեբաստիա եւ յաջողեցաւ իշխանութիւն նորա, որովհետեւ ի մեծ համարի էր եւ Սեբաստիա իբր թագաւորական քաղաք Արծրունեաց, եւ Աթոռ Պետրոսի Գետադարձին, ուր եւ թաղեալ կայ մարմին նորա» (Դիւան Հայոց Պատմութեան, Հատոր Ժ. Մանր Մատենագիրք, Յովհաննէս Սեբաստացի, 388-389):

Անանիա Սեբաստացի չընդունեց ուրեմն Յովհաննէս Մեծաբարոյի (1203-1221) կաթողիկոսութիւնը և վստահելով իր դիրքին ստեղծեց նոր աթոռ մը եւս երբ արդէն գոյութիւն ունէին Հռոմկլայի աթոռին իրաւասութենէն անջատ Աղթամարի կաթողիկոսութիւնը, Հայաստանի իսլամ տիրապետութեան տակ գտնուող մասերուն իբր կաթողիկոս, ինչպէս Անիի մէջ կը նստէր ուրիշ կաթողիկոս մը, (Բարսեղ Անեցի, 1195) Վրաստանի տիրապետութեան ենթարկուած Հայկական շրջաններու վրայ իր իշխանութիւնը գործադրող: Այսպէս քաղաքական տիրապետութեանց համեմատ երկուքի բաժնուած բուն Հայաստանը երկու կաթողիկոս ունէր և Ամենայն Հայոց աթոռէն բաժնուած էր:

Իկոնիոյ Սուլթանութիւնն ալ նոյնքան հայաբնակ երկիր մըն էր և առանձին քաղաքական միութիւն մը: Անանիա եպիսկոպոս այս պարագան ի նպաստ իրեն գործածեց և իր կողմը դարձուց Սելջուկեանց տէրութեան ներքեւ գտնուող եպիսկոպոսները «չոքաւ առ Սուլտանն զոր Հոռոմաց կոչեն, եւ ետ նմա կաշառս» (Կիրակոս, 70) և օգտագործեց քաղաքական փաստը — ինչպէս կ'ըսէ Օրմանեան (Ազգապատում, 1563)— որով Սուլթանին հպատակ Հայերը, Հայոց թագաւորին Լեւոնին ազդեցութենէն կը հեռացուէին: Եւ այսպէս հակաթոռ կամ ինչպէս Կիրակոս Գանձակեցի կ'ըսէ (տես տպ. Մոսկուա, 1858 էջ 87) «եղեւ հակառակաթոռ ի Սեւաստ» հաստատուելով Ս. Նշան թագաւորաշէն և հայրապետական վանքը (Ազգապատում, 1563): Այս նոր աթոռով Հայոց կաթողիկոսութիւնը չորս ճիւղերու կը բաժնուէր, համաձայն չորս տէրութեանց որոնց ներքև բաժնուած էին Հայերը:

Անանիայի այս ձեռնարկին յաջողութեան նպաստեցին ժամանակին քաղաքական և եկեղեցական անցքերը:

Լեւոն թագաւոր և Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. Սուլթանը (1191–1193 և 1204–1211) իրարու դէմ պատերազմած էին — ինչպէս ըսուեցաւ արդէն —, Լեւոնի բանակը անգամ մը յաղթուած, երկրորդ անգամ յաղթական եղած էր և մէջերնին վերջապէս հաշտութիւն մը կնքուած էր, բայց Սուլթանը միշտ հաճութեամբ պիտի ընդունէր Լեւոնի ազդեցութիւնը նուազեցնող ձեռնարկ մը, իսկ Լեւոն պիտի չ'ուզեր լոկ եկեղեցական խնդրոյ մը պատճառով Սուլթանին հակառակ կամ անհաճոյ քայլ մը առնել:

Ուստի ինչպէս կանուխէն Բարսեղի ատեն, նոյնպէս այս անգամ Անանիայի կաթողիկոս հռչակուելուն դէմ պաշտօնական գործողութիւն չկատարուեցաւ կամ որոշում մը չտրուեցաւ Կիլիկիոյ թագաւո-

րութեան և անոր ազդեցութեան ենթարկեալ Հռոմկլայի աթոռին կողմէն (Օրմանեան, Ազգապատում, 1563–1554):

Սեբաստացի պատմիչը Յովհաննէս (տես Դիւան Հայոց Պատմութեան, նոյն, 389) կ'ըսէ թէ «Եւ եղեւ զի ծագեցաւ գժտութիւն ինչ ի մէջ Լեւոնի արքայի եւ Յոհաննու կաթողիկոսի, յետ կալոյ նորա յԱթոռ հայրապետութեանն ժամանակս ինչ(1), վասնորոյ համարձակութիւն առեալ բռնակիչք Փոքուն Հայոց հաստատեցին զիշխանութիւն կաթողիկոսի իւրեանց Անանիայի եւ այնուհետեւ ունէր Անանիա կաթողիկոս տիրաբար յայցելութիւն իւրում թէմի եւ առնէր այլ եւ այլ կարգաւորութիւնս, ունելով ընդ իւրեւ ոչ սակաւ եպիսկոպոսունս»:

Անանիա Սեբաստացի կաթողիկոսին թեմերուն մէջ էր նաև Կեսարիա, ուր 1204ին «դէպ եղեւ գնալ ... եւ ժողովուրդն ընկալան զնա մեծաւ պատուով իբրեւ զեպիսկոպոսապետ ազգիս» (Դիւան, նոյն, 389):

Նշանակելի է որ այդ օրերուն հոն էր նաև երկրին վեհապետը, ինչպէս կը հաստատուի Թէոդորոս Կեսարացիի վկայաբանութենէն որ Անանիա Սեբաստացի կաթողիկոսին հոն գտնուած օրերուն տեղի կ'ունենայ, 1204 Մայիս 18ին:

Այս վկայաբանութենէն յետոյ «դարձ արարեալ ի Կեսարիոյ Անանիա կաթողիկոսն եկն ի Սեբաստիա՝ եւ նստաւ ի տեղի իւրում ի վանս Սուրբ Նշանի այլ եւս ամս երիս՝ հանգեաւ ի Քրիստոս, եւ եդաւ մեծաւ պատուով ի շիրմի հարաւակողմն մենաստանիս արտաքոյ պարսպի մեծի եկեղեցւոյն, հուպ ի յորմն առաջի փակեալ դրանն, եւ պատուի երթեւեկաց դամբարան նորին մինչեւ ցայսօր ժամանակի ՈԾԶ (= 1207)»: (Դիւան. Ժ. հտ. 390):

Արդարեւ կը մնայ իր տապանագիրը Ս. Նշան վանքին մէջ սա արձանագրութեամբ (տես Գարեգին եպս. Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Ա. հտ. 179):

«Յայս դամբարանիս եդին ըզմարմին,
Տեառն Անանիա կաթողիկոսին.
Որ օծեալ նստաւ վեհապետ ազգիս,
Ի գերահռչակ սուրբ մենաստանիս,
Սա էր ազգական Պետրոսի Մեծին,
Գետադարձ կոչեալ սուրբ հայրապետին.
Ժամանեաց վախճան սուրբ կենաց նորին,
Թուին վեց հարիւր յիսուն եւ վեցին»:

Նկատելի է որ իր յաջորդը չ'ունենար Անանիա կաթողիկոս, և նոյնիսկ Սեբաստիոյ աթոռին յաջորդութիւնը կ'ընդհատուի պահ մը (1207–1288) կամ անոր յաջորդները անծանօթ կը մնան մեզի:

Միայն մեծ հաւանականութիւն կայ մտածելու թէ Սելջուկ Սուլթանին Հեթում թագաւորին հետ համաձայնութիւնը վերջնական հանգամանք առած ըլլալով և Յովհաննէս Զ. Մեծաբարոյ վերահաստատուած ըլլալով իր աթոռին վրայ, Անանիա Սեբաստացի կաթողիկոսին յաջորդ մը ընտրելու պէտք չէ տեսնուած՝ և բոլոր հակաթոռ կաթողիկոսներու՝ Անիի Բարսեղ Բ. Անեցիի (1195–1207), Սսոյ

(1) Այս հակառակութիւնը այնքան առաջ կ'երթայ որ Լեւոն թագաւոր 1207ին Սիսի մէջ կաթողիկոս կը նստեցնէ Դաւիթ Արքակաղնեցի հակաթոռ Մեծաբարոյ կաթողիկոսին որ իր պաշտօնը կը շարունակէր առանց Հայոց թագաւորէն ճանչցուելու՝ Հռոմկլայի մէջ:



Դաւիթ Բ. Արքակաղնեցիի (1204–1207) և Սեբաստիոյ Անանիա Սեբաստացիի (1203–1207†) աթոռները ջնջուած և Ամենայն Հայոց կաթողիկոսութեան իշխանութիւնը կեդրոնացած է դարձեալ Յովհաննէս Զ. Մեծաբարոյ կաթողիկոսին ձեռքերուն մէջ, որ Հայոց թագաւորին պէս բարեկամական յարաբերութիւններ մշակած է Ռումի Սելջուկ թագաւորին հետ և անոր երկիրներուն վրայ ալ իր հեղինակութիւնը ի գործ դրած:

Իր յաջորդը՝ Կոստանդին Ա. Բարձրբերդցի (1221–1267) նոյնպէս խիստ բարւոք յարաբերութիւններ կը մշակէր Իկոնիոնի Սուլթանին ինչպէս նաև իսլամ ուրիշ վեհապետներու հետ: Ժամանակակից պատմագիրը Կիրակոս Գանձակեցի անոր գովեստը հիւսելով իբր «այր առաքինի ու հեզ, սուրբ վարուք» կ'ըսէ թէ «զսա պատուէին ամենայն ազգք՝ ոչ միայն քրիստոնեայք այլ եւ ազգն Տաճկաց» և կը պատմէ թէ ինչպէս Իկոնիոյ Սուլթան Ալայէտտին Կայ Խոպաթ Ա.ը, Էյուպեան Մելիք Էշրաֆը, և Եգիպտոսի Մելիք Քէմալը, երբ Խուարէզմի Շահ Ճէլալէտտինի դէմ կ'երթային (1230) Հռոմկլայէն կ'անցնին և կաթողիկոսը Սուլթաններուն բանակը կ'երթայ: Սուլթանները «իբրեւ գիտացին զգալուստ նորա՝ ինքեանք իսկ ընթացան ընդ առաջ նորա եւ բերեալ զնա ի բանակն մեծաւ պատուով՝ կանգնեցին նմա խորան ազնիւ ի մէջ խորանաց իւրեանց, ... եւ այսպէս մեծապատիւ արարեալ զնա զյոլով աւուրս՝ արձակեցին զնա մեծաւ պարգեւօք, գեղօք եւ դաստակերտօք, ...» (Կիրակոս, 96):

Այս իրողութիւնը կը հաստատէ թէ Հայերը կը վայելէին ո՛չ միայն կրօնական ազատութիւն, այլ նաև իրենց հոգեւոր պետը կ'արժանանար մասնաւոր պատիւներու, անոր կը տրուէր պարգեւներ, գիւղեր, կալուածներ, և կը կիրարկէր իրաւունքներ, ունէր առանձնաշնորհներ:

Հետեւաբար Հայ Եկեղեցին ինչպէս բովանդակ Փոքր Ասիոյ նոյնպէս նաև Կեսարիոյ և շրջականներուն մէջ կ'ունենար իր հաստատուն հիմնաւորութիւնը, և անջատ որոշ կազմակերպութիւնը՝ հովանաւորութեան և պաշտպանութեան տակ իսլամ Ռումի Սուլթաններուն:

Այնպէս որ բոլոր երկիրը կը լեցուէր եկեղեցիներով և վանքերով և կրօնական ազատ պաշտամունքը և Հայ Եկեղեցւոյ ինքնավարութիւնը կ'ապահովուէր, միեւնոյն ատեն ապահովուելով ազգային ինքնապահպանութիւնը:

## Դ.

## ՀԱՅ ՀՈՌՈՄՆԵՐ

Դժբախտութիւն մըն է որ մինչև Սելջուկեանց Կապադովկիոյ տիրելը և Հայ Եկեղեցւոյ ազատ կազմակերպութեան ապահովումը, Կապադովկեան Հայ ստուար զանգուածները, որ դարեր շարունակ Հայաստանէն հոն տեղափոխուած էին և հոն այնքան կարեւոր ու նշանակելի դեր մը կատարած՝ և երկիրը գրեթէ ամբողջ իրենք գրաւած՝ արդէն մեծամասնաբար բոլորովին յունացած էին, նոյնիսկ իրենց ծագումը մոռնալու աստիճան, թրծուած ըլլալով Բիւզանդականութեան մէջ: Եւ տարբեր կերպով չէր կրնար ըլլալ, քանի որ իբր

ղետական ուղեգիծ և հիմնական ծրագիր Բիւզանդական պետութիւնը ընդգրկած էր մէկ ազգի և մէկ կրօնքի մէջ բոլոր բաղկացուցիչ ազգերը ընկլուզելու նպատակակէտը, որ այնքան դիւրաւ իրագործեցին, մանաւանդ քրիստոնէութեան առաջին դարերուն երբ տակաւին կրօնական վէճեր գոյութիւն չունէին և Եկեղեցին մի և ընդհանրական էր։ Այսպէս ծնունդ առաւ Օրթոտոքս հայութիւն մը որ Յոյները Արմենեակ կը կոչէին։ Սակայն դարերու ընթացքին անոնք բոլորովին Յոյն համարուեցան և Յոյն դաստիարակութիւն ստանալով բոլորովին հայութեան համար կորսուեցան։ Իսկ յաջորդ դարերուն երբ Հայ ազգային Եկեղեցին կազմակերպուած էր, Բիւզանդիոն չդադրեցաւ ամէն ջանք ի գործ դնելէ Բիւզանդացի կոչումով արուեստական ազգին մէջ ձուլելու Հայերը, որոնք անջատողական հակումներ ունէին։ Հետեւաբար ամէն միջոցի դիմեց ոչ-քաղքեդոնական Հայերը յունադաւան դարձնելու համար, և կիրարկեց թէ՛ բռնական և թէ՛ համոզողական միջոցներ։ Հայերէն ոմանք հալածանքներէն փրկուելու և այլք փառքերու, պատիւներու և տիտղոսներու ակնկալութեամբ, համակերպած են հարկադրուած կրօնքը ընդունելու և այսպէս յաջորդ դարերուն ալ միշտ ստուարացած է թիւը Արմենեակներու, որոնց մէկ մասը բոլորովին մոռցած էր իր ծագումին գիտակցութիւնը և Յոյն կը նկատէր ինքզինքը։ Այնպէս որ Փոքր Հայոց, Կապադովկիոյ և Փոքր Ասիոյ մէկ որոշ մասին յետնագոյն ժամանակներու մէջ իբր Յոյն ներկայացող բնակչութեան նախահայրերը մեծ մասամբ Հայեր եղած են։

Ժամանակը անոնց մեծ մասը բոլորովին յունացուցած էր, իսկ մէկ մասը կիսովին, երբ Սելջուկեանք տիրեցին այս երկիրներուն։

Կիսովին յունացածները որոնք մեծ թիւ մը պէտք չէ ունեցած ըլլան բոլորովին յունացածներուն բաղդատմամբ, հաւանօրէն ժամանակով ուշ գաղթողներն են, որոնք բոլորովին յունացնելու ատենը չէր ունեցած Բիւզանդական պետութիւնը։ Անոնք դեռ կը պահէին իրենց Հայ ըլլալու գիտակցութիւնը, թէեւ Օրթոտոքս էին կրօնքով։ Ասոնցմէ փոքր հատուածներ մինչև վերջին ժամանակներս, այսինքն մինչև ընդհանուր պատերազմ, կը պահէին իրենց գոյութիւնը և բաւական ստուար թիւ կը կազմէին Թօգատի և մանաւանդ Ակնայ շըրջակայ գիւղերուն մէջ, որոնց Հայկական անունները մանաւանդ խիստ նշանակելի էր (տես Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Ա. հատ. էջ 95 և 251, ևայլն)։

Ասոնք Հայերէն կը կոչուէին Հայ-Հոռոմ։ Անոնք՝ այնպիսի շրջանի մը ուր դեռ իրենց յունացումը լիովին չէր կատարուած, և միայն կրօնքով միացած էին օրթոտոքսութեան և ժամանակի պէտք կար որպէսզի անոնք լեզուով, դաստիարակութեամբ և քաղաքակրթապէս ալ համաձուլուէին Բիւզանդականութեան հալոցին մէջ, ենթարկուեցան մահմետական տիրապետութեան, և կրցան իրենց գոյութիւնը՝ իբր Հայ քաշքշել բաւական երկար ատեն ևս, սակայն միշտ պակսելով և միշտ հայութեան ազգային նկարագիրէն բան մը կորսնցնելով։

Կեսարիա, և Արգէոսի շրջակայքը ապրող բնակչութեան մէջ երբ այնքան մեծ թուով Հայ ծագումով Յոյներ կային, սկսեալ նոյնիսկ Դ. դարէն, և ուր յաջորդ դարերուն այնքան մեծ թուով Հայեր եկած և օրթոտոքսանալով կորսուած էին Հայութեան համար, շատ հաւա-



նօրէն կար նաև մաս մը այդ տարրէն որ կէս Յոյն կէս Հայ վիճակ կը ներկայացնէր։

Արդարև եթէ շատ նոր փաստեր չունինք հաստատող թէ Արգէոսի շուրջը տեղաւորուած Հայերու մէջ ալ կային այս կիսովին յունացած Հայերէն, երբ մահմետական Սելջուկները հոն իրենց ոտքը դրին, սակայն ինչ ինչ յիշատակութիւններ անժխտելի կերպով ցոյց կու տան թէ հոն ալ գոյութիւն ունեցած են գուցէ քիչ թուով Հայ-Հոռոմներ:

Ասոնց անժխտելի փաստերն են յիշատակութիւնը գրիչի մը՝ «Բարսեղ միայնակեաց գեղագիր (Calligraphus) Հայաստանէն» որ 1065ին — նոյնիսկ Սելջուկեանց տիրապետութենէն հազիւ քանի մը տարի առաջ— օրինակած է Ոսկեբերանի յունարէն ճառերը (Die Dumba'sche Evangelien.— Handschriftvom Jahre. 1226, Leipzig. 1904), որուն համար թերեւս առարկուի թէ տեղացի կամ Կապադովկիոյ բնակիչ չէր, այլ Հայաստանէն, մինչ Կապադովկիացի էր ուրիշ գրիչ մը «Վասիլ դպրապետ Մելետինեցի, Ովրէստէս քահանայի որդին» որ 1226ին գրած է Կեսարիոյ մէջ յունարէն ձեռագիր Աւետարան մը(1) բարակ մագաղաթի վրայ։

Գրութիւնը իր մաքրութեամբ և սխալազերծ ընդօրինակութեամբ «կարելի է, կ'ըսէ De Eugen Zomarides, իր արուեստին գլուխ-գործոցն անուանել» (Die Dumba'sche Evangelien Haudschriftvom Jahre. 1226, Leipzig, 1904. տես ՀԱ. 1908, 220)։

Այս վկայութիւնը կը հաստատէ թէ Վասիլ դպրապետ Մելետինեցի հմուտ գրիչ մըն էր և յունարէնի քաջ ծանօթ և զայն խորապէս ուսած։ Ան ինչպէս կ'երեւայ անգիտակ չէ նաև հայերէնի վասնզի տեղ տեղ հայերէն յիշատակարաններ ալ գրած է։ Այսպէս թղ. 165 բ. «Զվասիլ գրիչ յիշեսջիք առ Քրիստոս, զի եւ դուք յիշեալ լիջիք»: Թղ. 166ա. «Փառք Աստուծոյ յաւիտեանս յաւիտենից ամէն: Գրեցաւ եւ կատարեցաւ Աւետարանս ձեռամբ իմով Վասիլի դպրապետիս, ի Մելետինոյ որդոյ Արիստի քահանայի թվ. ՈՀԵ. (675+551=1226) յամսեան մայիս ի պետս անձին իմոյ եւ յիշատակ հոգոյ ի կամս Քրիստոսի»:

Ասոր կից է յունարէն յիշատակարանը որուն թարգմանութիւնը կու տամ օգտուելով Հ. Ներսէս Ակինեանի յօդուածէն (ՀԱ. 1908, 220)։

«Աւարտեցան չորք Աւետարանք քարոզչացն Աստուծոյ, մեծացն չորից Աւետարանչացն Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու, եւ Յովհաննու ձեռամբ իմով Վասիլի Դպրապետի (Πρωτονοτάριος) Մելետինեցւոյ, որդւոյ Ովրեստիսի քահանայի, ի ժամանակին յորժամ նուաճեաց Մեծն Սուլթան Քէյ Կաբադ(2) որդին Ղիաթեդինի Քէյ Խոսրովու(3) զՅունաստան, զՀայաստան, զԱսորիս եւ զամենայն տեղիս եւ զգաւառս Թուրքաստանի եւ զծովու, մինչեւ ի Մեծ Կեսարիա, եւ որք հանդիպիք այսմ Աւետարանիս կամ օրինակէք կամ ընթեռնուք, յիշեսջիք զիս զբազմամեղս զՎասիլ եւ զծնողս իմ ի Տէր հանգուցեալ զՈվրեստէս քահանայ եւ զմայրն իմ զՍոփիա եւ ընդ այսր ողորմեսցի Ձեզ ամենեցուն ամենասուրբն Աս-

(1) Սեփականութիւն մասնաւորի մը Նիկողայոս Թէոդոր Դումբա անուն (Վիեննա) (տես ՀԱ. 1908, էջ 220)։

(2) Ալաէտտին Կայ Խոպաթ Ա. (1220–1236) երեւելի Սուլթանը՝ որուն օրով Սելջուկ Ռումի պետութիւնը կը բոլորէ իր փառքի և մեծութեան շրջանը։

(3) Ղայասէտտին Կայ Խոսրով (1191-1193 և 1204-1211)։

տուած, պահեսցէ անվնաս իւրով մարդասիրութեամբն, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն: Գրեցաւ ի թուին առ. ՈՀԵ (=1226) եւ յինդիկտ. ԺԴ. յամսեան Մայիսի Ա.»:

«Վասիլ Դպրապետ» որ ապահովաբար միակը չէր իր տեսակին մէջ, Հայ մըն էր և վստահաբար օրթոտոքս, որ այս Աւետարանը գրչագրած էր ի պէտս Հայ-Հոռոմներու։

«Բարսեղ Միայնակեաց գեղագիրը» և «Վասիլ Դպրապետ» ցոյց կու տան թէ Սելջուկեանց տիրապետութեան սկիզբէն մինչև ԺԳ. դար և հաւանօրէն աւելի ուշ, Կեսարիոյ մէջ ապրած էին Հայ-Հոռոմներ և անոնք իրենց մէջ ունէին անձեր, որոնք ստացած Յունական դաստիարակութիւն, ծառայած են յոյն դպրութեան։

Դժբախտաբար անոնց մասին աւելի ծանօթութիւններ չունինք, սակայն պիտի տեսնուի յետոյ թէ այդ Հայ-Հոռոմները, այլեւս ձերբազատուած Բիւզանդական ճնշումէն, կրցած են պահել իրենց գոյութիւնը մինչեւ ԺԷ. դար, ուր իրենց հետքերուն պիտի հանդիպինք դեռ։ Աւելորդ է ըսել թէ անոնք շատ յամրաբար օր մը բոլորովին պիտի ձուլուէին Օրթոտոքսութեան մէջ և պիտի անհետանային։

Ե.

## ՀԱՅԵՐՈՒ ԻԲՐ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԸ

## ՌՈՒՄԻ ՍԵԼՋՈՒԿ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Երկրին առեւտուրին, ճարտարարուեստին և երկրագործութեան մէջ գործօն դեր ունեցող տարրը եղած են երկրին քրիստոնեայ բնիկ ժողովուրդները, որոնք պաշտպանութիւն գտած էին Սելջուկ Սուլթաններէն, որոնք համոզուած էին թէ Սելջուկ-Թուրք վաչկատուն և կիսավայրենի ցեղը անբարեյոյս էր և անընդունակ երկրին արուեստները, վաճառականութիւնը, ինչպէս նաև հողագործութիւնը ձեռք առնելու։

Ասոր համար առեւտուրը բոլորովին քրիստոնէից մենաշնորհը եղած է։

Հեթում որ բաւական ընդարձակ տեղեկութիւններ տուած է այս երկրին վրայ, պետութեան բնակիչներուն վրայ խօսելով կ'ըսէ. «Ի թագաւորութեան երկրին Թուրքաց բնակին քառեակ ազգք, այսինքն Յոյնք, Հայք եւ Յակոբիկք(1), սոքա քրիստոնեայք են, եւ կեան վաճառականութեամբք եւ երկրագործութեամբք, եւ Թուրքք՝ որ են Սառակինոսք, որ առին ի ձեռաց Յունաց զտէրութիւն այդ երկրի եւ ոմանք ապրին վաճառուք, եւ երկրագործութեամբք եւ բնակին ի քաղաքս եւ ի գիւղս, իսկ այլք միշտ դիմեն յանտառս եւ կան ի դաշտս՝ ձմերանի եւ ամարանի, որք են հովիւք խաշանց եւ են կարի քաջ աղեղնաւորք» (*Հեթում*, 19)։

(1) Ասորի Յակոբիկեան, այսինքն արդի Սուրեանի Գատիմները (= հին Ասորի) որոնք պահած են իրենց նախնական կրօնքը, մինչ ուրիշներ Նեստորականութեան և Կաթոլիկութեան յարած են։



Ինչպէս այս տողերը ցոյց կու տան Թուրքերը՝ տակաւին նախնական ժողովուրդ, իբր ապրուստի միջոց իրենց սեփականած ունէին միայն խաշնարածութիւնը, իսկ երկրին երկրագործութիւնը և վաճառականութիւնը, ինչպէս նաեւ ճարտարագործութիւնը ամբողջ ձեռքըն էր քրիստոնէից, իրողութիւն որ կը հաստատէ նաև Մարքո-Փոլօ Վենետիկցի ճանապարհորդը որ ԺԳ. դարուն երկրորդ կիսուն այցելած է այս երկիրը որ ինքն Turquemènie (=Թուրքմէնի) կը կոչէ։ Ան կ'ըսէ թէ «Թիւրքմէնիի մէջ երեք ազգէ անձինք կան: Թիւրքմէնները, որ Մուհամմէտը կը պաշտեն, կոպիտ մարդիկ են եւ իրենց լեզուն ունին: Լեռները եւ դաշտերը կը բնակին ուր որ լաւ արօտատեղի կը գտնեն, վասնզի ամբողջովին կենդանական սնունդով կ'ապրին: Եւ այս երկրին մէջ շատ լաւ ձիեր կը ծնին որ Թուրք կը կոչուին եւ ազնիւ ջորիներ որոնք բարձր գինով կը ծախուին: Եւ միւս բնակիչները Հայ եւ Յոյն են որ անոնց հետ խառն կը բնակին քաղաքներու եւ գիւղերու մէջ եւ վաճառականութեամբ ու արուեստներով կ'ապրին, վասնզի աշխարհիս ամէնէն գեղեցիկ գորգերը (=կարպէտ) կը գործեն: Մետաքսէ կերպասներ եւս կը գործեն որդան կարմիր եւ ուրիշ այլեւայլ գոյներով, խիստ գեղեցիկ եւ խիստ ճոխ, շատ մեծ քանակութեամբ, եւ առատութեամբ ուրիշ կերպասներ: Իր քաղաքներու շարքին են Գոնիա, Կեսարիա եւ Սեբաստիա»(1): Անժխտելի է ուրեմն որ քրիստոնեայք երկրին տնտեսական կեանքին գլխաւոր սիւնը կը կազմէին։ Հայերը, որ այս քրիստոնեայ բնակչութեան մէջ ամէնէն նախապատիւ դիրքը ունէին, շատ հաւանօրէն այս մարզերուն մէջ առաջին տեղը գրաւած էին, մանաւանդ ԺԲ. դարէն յետոյ, երբ Հայ առեւտրականներու համար կացութեան մէջ նըպաստաւոր փոփոխութիւն մը առաջ կու գար, վասնզի ԺԳ. դարուն սկիզբը Կ. Պոլսոյ մէջ հաստատուած Լատին կայսրութիւնը վերջ կու տար Հայոց դէմ կրօնական հալածանքին, որ արդէն Սելջուկ երկրին մէջ գոյութիւն չունէր։ Նիկիոյ կայսրերն, իրենց երկրին տնտեսական շահերը նկատի առնելով, իրենք ալ կը դադրեցնեն հալածանքը, որպէսզի Հայերը չհեռանան։

Հայերը՝ հաւանօրէն այս նպաստաւոր կացութենէն օգտուելով, գործօն դեր մը կը կատարեն բովանդակ Փոքր Ասիոյ, ինչպէս նաև համաշխարհային առեւտրական շարժման մէջ, ճիշդ այն ժամանակամիջոցին երբ Վենետիկի և Ճենովայի հասարակապետութիւնները ծովային իրենց վաճառականութեամբ Արեւելքի արտադրութեանց համար նոր շուկաներ կը բանան։

Հայերը՝ որոնք Արեւելքի ցամաքային վաճառականութեան մենաշընորհը ունէին, գրեթէ հինուց ի վեր, իրենց կարաւաններով մինչև Կեդր. Ասիա և Հնդկաստան երթեւեկելով, Ասիական ապրանքները փոխադրել սկսան ծովեզերեայ քաղաքները, բեռցնելու համար Վենետիկի, Ճենովայի և Բիզայի նաւերը։ Փոքր Ասիա այն ատեն չորս գլխաւոր դուռ ունէր, որոնք էին Տրապիզոն, Կ. Պոլիս, Իզմիր և Այաս։ Ասոնցմէ միայն վերջինը Կիլիկիոյ Հայ իշխանութեան մէջ էր, և ինչպէս Մարքօ Փօլօ կը հաստատէ ԺԳ. դարուն, էր առեւտրական մեծ կեդրոն մը, ուր կը բերուէին «բոլոր համեմները եւ մետաքսեայ եւ ար-

(1) Այս հատուածը երեք Հայ թարգմանիչ ունեցած է, երեքն ալ տարբեր հրատարակութիւններու վրայ հիմնուած։ Երեքը իրարու համաձայնեցնելով արտագրուած է վերոգրեալը։

ծաթեայ կերպասներ եւ ուրիշ արժէքաւոր անօթներ, որոնք կու գան ներքին գաւառներէն» (*Յ. Յակոբեան*, Ուղեգր. 44)։ «Վենետիկի, Ճենովայի եւ ուրիշ երկիրներու վաճառականները հոս կու գան՝ վաճառելու իրենց ապրանքները կամ գնելու՝ ինչ որ իրենց պէտք ունին» (*Նոյն*)։

*Հայերը, Փոքր Ասիոյ այս կարեւոր դուռը իրենց ձեռքը ունենալէ զատ, այդ դարուն առեւտրական կարեւոր գաղութներ ունէին նաև այդ թերակղզիին միւս դուռներուն, Տրապիզոնի, Կ. Պոլսոյ և Զմիւռնիոյ մէջ, ինչպէս կը հաստատուի պատմական անսուտ վաւերագիրներով, և շատ կարեւոր դեր մը կը կատարէին ասիական ապրանքներու դէպի արեւմտեան երկիրները առաքման մէջ, այդ ծովեզերքներուն մօտեցող նաւերն բեռցնելով իրենց ներսերէն բերած ապրանքները և երբեմն նոյնիսկ խիզախելով զանոնք անձամբ տանելու արեւմուտք։*

*Սելջուկ Ռումի կայսրութիւնը իր ձեռքը չունէր կարեւոր ծովեզերեայ քաղաք մը որպէսզի հոն ալ Հայը ցոյց տար իր առեւտրական և վաճառականի անժխտելի տաղանդը։ Սակայն այդ ցամաքային երկրին մէջ Հայը դարձեալ կրցաւ իր ձիրքերը ցոյց տալ, իբր երկրագործ, իբր մանր առեւտրական և իբր ճարտարագործ։*

*Անուրանալի է որ Հայերը, որոնք այդ երկրին վաղեմի բնակիչներն էին, անպատճառ կ'զբաղէին երկրագործութեամբ որ ամէն հաստատուն բնակութիւն ունեցող ժողովուրդի անդրանիկ գործն է։ Սակայն կարեւոր մէկ մասը Հայերուն հրապուրուած էր տեղափոխուիլ Ռումի Սուլթանութեան երկիրները՝ և շատ մտքերը հարկադրուած կազմել քաղաքներու բնակչութիւնը, ինչպէս կը հաստատէր Մարքօ Փօլօ, և հետեւաբար մեծ մասամբ կ'զբաղէր առեւտուրով և արհեստներով։*

*Մասնաւորապէս Կեսարիոյ քրիստոնեայ բնակչութիւնը, որուն մէջ կարեւոր տեղ մը կը գրաւէին անտարակոյս Հայերը՝ ամէն երկրայութենէ դուրս է որ այս շրջանին այդ քաղաքին մէջ առեւտրական ձեռներէցութեան օրինակը տուած է, տրուած ըլլալով որ Կեսարիա կը գտնուէր առեւտրական քառուղիի մը վրայ և նշանաւոր էր իբրև ցամաքային վաճառականութեան կեդրոն մը և Փոքր Ասիոյ ներքին վաճառականութեան վաղեմի և գլխաւոր կայան մը։ Ան մեծագոյն հանգրուաններէն մին էր ցամաքային առեւտրական կարաւաններուն որոնք Ասիոյ խորերէն կու գային դէպի ծովեզերքները։ Դժբախտաբար այս իրողութիւնը պայծառ կերպով նշանակող ու պարզաբանող վաւերագիրներ և ականատեսներու վկայութիւններ չափազանց ցանցառ են։ Բայց այդ քիչն ալ մակաբերաբար միզի կը խօսի շատ բան։*

*Մարքօ Փօլօ այդ քիչերէն մին է որ կը հաւաստէ թէ Հայերը և Յոյները— ինչպէս ինքն կը կոչէ — Թիւրքմէնիստանի մէջ, կ'զբաղէին վաճառականութեամբ։ Ան է որ դարձեալ այս ցեղերուն կը վերապահէ ճարտարագործութիւնը։ Եւ նոյնիսկ կը ճշդէ այն ճարտարագործութիւնները որոնց մէջ Հայերը և Յոյները ուշագրաւ յաջողութիւն ցոյց կու տային։ Անշուշտ իբր արեւմուտքէն եկող մը, իրեն համար ինչ որ նոր էր և անսովոր, ան էր որ իր մասնաւոր ուշադրութեան առարկայ պիտի ըլլար։ Ուստի Մարքօ Փօլօ ամէնէն առաջ կը յիշատակէ թէ Ռումի երկրին քրիստոնեայ բնակիչները կը գործէին գորգեր որոնք* «աշխարհի ամէնէն գեղեցիկ եւ ամէնէն նուրբ գորգերն» *էին։ Յետոյ կը յիշատակէ մետաքսեայ կերպասներ* զանազան գոյներով, *շատ*



*գեղեցիկ, ճոխ և մեծ քանակութեամբ։ Այս խօսքերը կը հաստատեն թէ ո՛չ միայն անոնք գիտէին մետաքսեայ կերպասներու տարազագործութիւնը այլ նաև մետաքսը ներկելու ճարտարարուեստին ալ տեղեակ էին։*

*Հաւանական է մտածել՝ մակաբերաբար թէ բուրդի ներկարարութիւնը և տարազագործութիւնը եւս գոյութիւն ունէր Սելջուկ պետութեան մէջ և Մարքօ Փօլօ անոր չ'ընծայեր մեծ կարեւորութիւն, և* «ուրիշ կերպասներ» *ըսելով կ'անցնի, վասնզի անոնք իրեն համար մասնաւոր շահեկանութիւն մը չէին ներկայացներ։*

*Ամէն տարակոյսէ դուրս է թէ այդ համառօտ տողերուն մէջ Մարքօ Փօլօ չէ յիշած այն ամբողջ արուեստները որոնք առանձնայատուկ էին քրիստոնէից, սակայն որոշ է թէ երկրին տնտեսական կեանքին մէջ երբեք աննշան չէր Հայոց կատարած դերը։*

## Զ.

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ ԴԵՐԸ

*Իկոնիոնի Սուլթանները որոնք ինքզինքնին պճնած էին «Հռոմէական» (Ռումի) տիտղոսով, յաւակնելով ժառանգորդը հանդիսանալ Բիւզանդական կայսրութեան և շարունակել զայն անոր բնակիչներով, նմանցնել աշխատեցան նաև անոր կառավարելու եղանակը, պետական դրութիւնը և կազմը, ինչպէս նաև անոր մեծագործութիւնները։ Այս նմանողութիւնը բաւական ստրկական նկարագիր մը ունէր, վասնզի Թուրքերը քաղաքակրթապէս կը գտնուէին բաւական վար աստիճանի վրայ քան Բիւզանդացիները և չէին կրնար լրիւ ու պատշաճօրէն նմանցնել ինչ որ անոնք կը կատարէին։ Սակայն ամէն ջանք ըրին ընդօրինակելու համար Բիւզանդական կայսրութիւնը։ Այսպէս կազմեցին Տիվան մը՝ նմանութեամբ Հռոմէական Ծերակոյտին, որ Վէզիրին նախագահութեան տակ կը վարէր պետական գործերը։*

*Նոյնպէս Բիւզանդականին նմանողութեամբ պալատական աստիճանաւորները և իրենց տիտղոսները բազմադիմի էին։ Նուազ բազմաթիւ չէին արքայական առանձնաշնորհները՝ որոնց մէջ Սուլթանները կը հետեւէին իրենց նախորդներէն՝ Պուիտեաններէն հաստատուած օրինակներուն։*

*Ռումի կայսրութիւնը կը կիրարկէր նաև աւատական դրութիւնը հանդէպ քրիստոնեայ իշխաններու, որոնք կը ճանչցուէին Իկոնիոյ Ռումի Սուլթանէն իբր ճորտ, պայմանով որ տուրք վճարէին և զօրք տային 'ի հարկին։*

*Ռումի Սուլթանները նոյնպէս, նմանողութեամբ Հռոմէական կայսրերու՝ ճոխութիւն, պերճանք և շքեղութիւն ստեղծել ուզեցին և ինքզինքնին տուին մեծագործութեանց և երկրին ամէն կողմերը պճնազարդեցին գեղեցիկ շինութիւններով։ Մասնաւորապէս իր շինարարական գործունէութեամբ համբաւաւոր եղաւ Ալայէտտին Կայխոպատ Ա.* (1220-1236) «այր իմաստուն եւ ատաղաբաշխ» (*Սմբատ*, 118) *ամէ-*

նէն զօրաւոր և նշանաւոր իշխանը Սելջուկ Ռումիներու որ շքեղ շինութիւններով զարդարեց իր պետութեան գլխաւոր քաղաքները։

Ալայէտտին Կայ Խոպադ Ա.ի իշխանութեան շրջանը Ռումի Սելջուկ կայսրութեան փառահեղութեան շրջանն է, ուր Սելջուկեանց կարծես միայն կոտորելու, փճացնելու և քանդելու սահմանուած ցեղը, կ'արտադրէ Բիւզանդական, Պարսիկ և Արաբ նմոյշներու նմանութեամբ հրաշակերտներ, որոնք բնական է թէ Սելջուկը չէ որ կը յղանար այլ Յոյն, Հայ և Ասորի միտքը, զորս գնահատելու առաւելութիւնը ունեցած են Իկոնիայի Սուլթանները մանաւորապէս Ալայէտտինի հօրմէն Կայ Խոսրով Ա.ի օրերէն սկսեալ։



ՇԱՀ ՃԻՀԱՆ ԽԱԹՈՒՆԻ ԹԻՒՐՊԷՆ ԿԱՄ ՏՈՒՆԷՐ ՔՈՒՊԷ

Այս Սելջուկ յիշատակարանը՝ իր արուեստովը ուշագրաւ, գերեզմանն է Ալայէտտին Կայ Խոպադի աղջկան Շահ Ճիհան Խաթունի: Քանդակները քրիստոնեայ արուեստագէտի մը գործն են հաւանօրէն:



Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1191-1193 և 1204-1211) որ յունական արքունիքին մէջ՝ Կ. Պոլիս ապրած էր տասը տարի, հրապուրուած այն շքեղութենէն և պերճանքէն որ Բիւզանդիոն կը ներկայացնէր, իր երկիրն անոր նման ծաղկեցնելու և շէնցնելու համար, Բիւզանդական կայսրութեան հպատակները զանազան խոստումներով կը հրապուրէ և իր երկիրը կը հրաւիրէ (տես Գելցեր, 381)։

Բիւզանդական քաղաքակրթութեամբ հրապուրուած այս Ռումի Սուլթանին՝ Կայ Խոսրով Ա.ի անդրանիկ զաւակը Ասէտտին Կայ Քաւուս Ա. (1211–1220) իր հօրը ուղղութեան կը հետեւի, իսկ իր միւս զաւակը Ալայէտտին Կայ Խոպադ Ա. կը գերազանցէ իր բոլոր նախորդները իբր մեծագործ վեհապետ մը։ Իր օրով մեծ զարկ կ'առնեն արուեստները և գեղեցիկ յիշատակարաններով կը ճոխանայ երկիրը։

Ալայէտտին ըստ արաբ և թուրք պատմագիրներուն, 1234ին Կալոնոռոսը գրաւելէն յետոյ զայն քաղաքի մը վերածեց՝ որ իր անունով Ալայա կոչուեցաւ։ Ալայէտտին հոն հաւաքեց իր գանձերը և նախամեծար կը համարէր հոն բնակիլ յաճախ։ Իր որդին և յաջորդը Ղայասէտտին Կայ Խոսրով Բ. (1237–1246) յաճախ հոն բնակեցաւ և հոն մեռաւ (Միտուան, 313).

Ալայէտտին շինած է նաև Ալաճա քաղաքը, որ շինուած է տեղը Կանտըլորի ամրոցին որ Հայ իշխանի մը սեփական էր և գրաւուեցաւ Ալայէտտինէ։

Խաղաղութեան երկար ժամանակաշրջան մը Սելջուկ Սուլթաններուն թոյլ տուաւ կազմակերպել երկիրը և հոն կառուցանել ճամբաներուն վրայ Քերվանսարաներ (ինչպէս Իշաքլի, Տօքուզ, Սելճէ, Աղխան, Սուլթան Խան, Զայ, Աղ-Սարայ և այլն), մզկիթներ և մէտրէսէներ (ինչպէս Գոնիա, Սեբաստիա, Կեսարիա, Ամասիա, Գարաման, Անտալիա, Էրզրում, Տիվրիկ և այլն), աղբիւրներ, քաղաքներու մէջ ագուգաներ և այլն։

Ըլկընի մէջ, որ Սելջուկեանց շրջանին կը կոչուէր Abigern, Ղայասէտտին Սուլթանը (1237–1279)(1) Սուլթան Ալայէտտինի հայրը՝ ջուրերը ծածկած էր ճոխ գմբէթներու տակ (de Hammer, Histoire de l'Empire Ottoman depuis son origine jusqu'à nos jours. trad. de l'allemand. par J. J. Hellert, Paris, 1835–1844, հատ. Թ. 315)։ Ասիկա հաւանօրէն ջրամբար մըն էր Կ. Պոլսոյ Պին-պիր-տիրէքին նման, շինուած Բիւզանդական աւանդութեանց համաձայն։

Գոնիա, Սեբաստիա, Կեսարիա, պետութեան երեք մեծ քաղաքները, հոյակապ շինութիւններով, մզկիթ, մէտրէսէ, իմարէթ, թիւրպէ, խան, հարստացած են Սելջուկեանց շրջանին։ Մանաւորապէս Կեսարիոյ մէջ ինչ որ այսօր կը տեսնուի իբր ճարտարապետական արժէք ներկայացնող շէնք, կառուցուած են այս շրջանին։

Անոնք կառուցին նաև մարդասիրական հաստատութիւններ, ինչպէս հիւանդանոցներ (Կեսարիա, Սեբաստիա, Զանկըրը, Գասթէմունի, Ամասիա և Գոնիա Աքսարայ)(2) (Քէմալլէտտին, 31)։

(1) Թուականը որ A. Saladin մէջ բերած է, հաւանօրէն սխալ է։

(2) Թրքական նոր պատմագրութիւնը, որ պէտք է ըսել թէ երբեք չի վախնար ծիծաղելի ըլլալէ, առանց փաստի այս հիւանդանոցներուն կը կցէ նաև մէկ մէկ բժշկական վարժարան (տես Քէմալէտտին,

*Այս շինութիւնները — այսօր ալ ուշագրաւ — ապահովաբար Սելջուկները առանձին պիտի չկարենային կանգնել։ Գեյցեր* (295) *իր հեղինակաւոր գրչով կ'ըսէ թէ* «հիմա թրքախօսական հոսանքի համաձայն, կը խօսին Սելջուկեանց խիստ զարգացած քաղաքակրթութեան հրաշալի մնացորդներուն վրայ, որոնցմէ Ռումի Սուլթանը՝ Ալայէտտին Քայ Խուպադ Ա. (1220–1236) իսկապէս փառաւոր շինութիւններ ունի: Միայն կը մոռնան ի հարկէ այն պզտիկ պարագան որ բոլոր այդ Սելջուկեան փառահեղութիւնները ոչ թէ իրենցմէն, այլ փոխառութիւններ են Պարսկականէն եւ Բիւզանդականէն» *և ինչո՞ւ չըսել նաև՝ Հայկականէն։*

*Այս տեսութիւնը ճիշդ է, վասնզի զուտ Սելջուկ կամ Թուրք քաղաքակրթութիւն մը գոյութիւն չէ ունեցած անցեալին մէջ և ցարդ չունի։ Անիկա փոխառութիւններու շարք մըն է, առաւելապէս քրիստոնեայ ձեռքերով կերտուած շէնքերուն վրայ դրոշմուած, աղաւաղող և չեշտուած ձեւով մը։ Սակայն անոնք ինքնուրոյն ոճ մը չունենալով, չեն դադրիր արժէք մը ունենալէ, մանաւանդ շինարարութիւններ ըլլալէ։*

*Արդ, անկարելի է մտածել թէ Հայ ճարտարներ և ճարտարագործներ, ինչպէս պետութեան ամէն մասերուն նոյնպէս նաև Կապադովկիոյ շրջանակին մէջ և մանաւորապէս Արգէոսի շուրջը՝ ուր այնքան եռանդուն կեանք մը կար այդ ժամանակամիջոցին, պետութեան երկրորդ մայրաքաղաքին՝ Կեսարիոյ մէջ կատարուած այնքան բազմաթիւ շինութիւններու, ինչպէս կարեւոր յիշատակարաններու, մզկիթներու, մէտրէսէներու և պարիսպներու կառուցման մասնակցած և իրենց քրտինքը խառնած չըլլան անոնց շինութեան աշխատանքին,*

---

31-32)։ *Եւ նկատելով թէ հնագոյնը անոնց Կեսարականն էր որ* 1205*ին կառուցուած է, Կեսարիոյ Թուրք արդիական պատմագիրը կու տայ քաղաքին առաջին թրքական բժշկական վարժարանն ունենալու պատիւը։ Այս գիւտը կը վերագրէ Քէմալէտտին Կ. Պոլսոյ բժշկական վարժարանի ուսուցիչներէն Տոք. Սիւհէյլի և Բրոֆ. Գաբրիէլի, սակայն համոզիչ փաստեր կը պակսին։ Այս յայտնութեան համաձայն այդ բժշկական վարժարանը և հիւանդանոցը հիմա Կեսարիոյ Հաճը Գըզ թաղին մէջ* Չիֆթէլէր *կամ* Գայասիյէ *և* Շիֆայիէ մէտրէսէ *անունով ճանչցուած կիսափուլ շէնքերն են։ Քէմալէտտինի տեսութեամբ* Չիֆթէլէր *կոչուելուն պատճառը թէ՛ դպրոց և թէ՛ հիւանդանոց միասին ըլլալն է, իսկ* Գայասիյէ *կոչումը առնուած է Սուլթան Ղայասէտտինի անունէն որուն օրով կառուցուած է և հիւանդանոց պարունակելուն համար* Շիֆայիյէ *կոչուած է։ Սակայն իր* (Քէմալէտին, 32) *իսկ փաստերը իր դէմ են, մանաւորապէս արձանագրութիւնը բացորոշ ցոյց կու տայ թէ սոսկ հիւանդանոց է։ Ահա այդ արաբերէն արձանագրութիւնը ըստ թարգմանութեան Քէմալէտտինի։* «Մեծ Սուլթան Ղայասէտ տունեան վէ տին Գըլըճ Ասլանի որդին Քայ Խոսրովի իշխանութիւնը մեծասցի ըլլայ: Այս հիւանդանոցին շինութիւնը եւ հաստատութիւնը Գըլըճ Ասլանի աղջիկը, աշխարհի եւ կրօնի համեստութիւն Կէվհէր Նէսիպէ Սուլթանուհիին կտակին համաձայն 602 թուականին կատարուած է»:

*Հիճրէթի* 602 *և Քրիստոսի* 1205 *թուականին կառուցուած շէնքը ուրեմն հիւանդանոց մըն էր, անշուշտ Կ. Պոլսոյ հիւանդանոցներուն նմանողութեամբ կառուցուած։*



*Անոնք ո՛չ միայն մասնակցած են այդ շինարարութեանց, ինչպէս պետութեան ամէն կողմերը կանգնած յիշատակարաններուն, այլ նաև Կեսարիոյ մէջ կառուցուածներուն վրայ դրոշմած են Հայկական արուեստին ցոլքերը։*



ՄԱՀՓԵՐԻ ԽԱԹՈՒՆ ԹԻՒՐՊԷՆ,

Այս գեղարուեստական յիշատակարանին վրայ հիացումով խօսած են Texier, E. Pittard, Madame Noëlle Roger եւ Խալիլ Էտհէմ:

Ուշադիր քննութիւն մը ցոյց կուտայ զարդերուն եւ մանաւանդ պատուհաններուն ձեւին մէջ Հայկական արուեստին ներգործութիւնը:

A. Saladin (տես Manuel d'Art Musulman, Paris, 1907, էջ 438-441) կ'ըսէ թէ «Երբ մարդ աչք նետէ Փոքր Ասիոյ քարտէսի մը վրայ պիտի տեսնէ իբր տեսակ մը ամրութիւն Փոքր Ասիան Միջին Ասիայէն բաժնող եւ Տրապիզոնէն Ատանա երկարաձգուող լեռնային զանգուած մը ուրկէ կարելի է ըստ հաճոյից արշաւել Անատոլուի դաշտերը, հիւսիսային Սուրիա եւ Միջագետք: Իրենց լեռներուն վրայ տիրող հակամիտութեան համաձայն, Հայաստանի լեռնականները ունեցած են միշտ հակում մը իջնելու Անատոլու: Այս է պատճառը Հայկական ազդեցութեան Կարնոյ, Սեբաստիոյ, Կեսարիոյ եւայլ յիշատակարաններուն վրայ»:

Այսպէս ուրեմն կը հաստատուի թէ Սելջուկ ճարտարապետութիւնը կրած է ի մէջ այլոց Հայկականին ազդեցութիւնը, թող ըլլայ շատ դոյզն կամ չափաւոր կերպով։

Այդ ազդեցութիւնը ի՞նչ կերպով ի յայտ կու գայ։ Ահա հարց մը որ կրնայ միտքերը զբաղեցնել, վասնզի Սելջուկեանց շինութիւնները կատարուած պահուն Հայ ճարտարապետութիւնը իր անկման շրջանին մէջ էր, վասնզի Հայաստան արդէն քարուքանդ եղած էր Թրքական արշաւանքներու հետեւանօք։ Հետեւաբար անշքացած արուեստ մը չէր կրնար նմոյշ ծառայել, մինչ մահմետական երկիրներու արուեստները ուսումնասիրելով անկարելի է չհասնիլ այն եզրակացութեան թէ Հայ ճարտարապետութիւնը Հայաստանէն դուրս սկսած է ծաղկիլ և խառնուիլ նոյն տեղերու արուեստներուն, վասնզի այս տնաւէր ժողովուրդին զաւակները իրենց բնիկ երկրէն դուրս իրենց արուեստը կը կիրարկէին և կը ծաղկեցնէին, թերեւս նոյնիսկ երկար տարիներէ ի վեր, իրենց նախնական հայրենիքին կառուցողական արուեստներու աւանդութիւնները պահելով և զանոնք կիրարկելով իրենց նոր հայրենիքին մէջ, որուն բնիկները դարձած էին։ Անոնք իրենց անհատական հեղինակութեամբ, իրենց Մայր-Հայրենիքէն բերած արուեստին ճաշակը — որ պահած էին սերունդէ սերունդ — կը կիրարկէին։ Յետոյ Սուլթանները կրնային Հայաստանի մէջ ապրող բնիկ ճարտարները բերած ըլլալ իրենց շինութիւններուն համար, տեսնելով անոնց գործերը։ Թորամանեան (Անահիտ, 1911) կ'ըսէ թէ առանց ճարտարապետները և շինողները մեզի ծանօթ ըլլալու, իրենց ոճէն հետեւցնելով կարելի է վստահօրէն ըսել թէ Հայկական ճարտարապետութեան դասական ոճին ընտրելագոյն նմոյշները կը հանդիսանան ԺԳ. դարուն շինուած Ախլաթի իսլամական դամբարանները և «պէտք չէ մոռնալ որ Վան, Ախլաթ, Արճէշ եւ Վանայ ծովին շուրջը ուրիշ քանի մը քաղաքներ Հայ ճարտարապետութեան մեծ վառարաններ եղած են միշտ, ամէն տեսակ ոճեր, ամէնէն առաջ այս տեղերէն ծագում առեր եւ տարածուեր են ամէն կողմ» (Նոյն)։

Միայն ասով կրնայ բացատրուիլ այն զարմանալի երեւոյթը որով Հայաստանի մէջ ԺԱ. դարուն վերջին քառորդին ճարտարապետութիւնը վերջին շունչը տալու վրայ եղած մէկ պահուն, երբ յանկարծ Գոնիայի մէջ կ'երեւի Ալայէտտինի հռչակաւոր մզկիթը, որուն վրայի զարդաքանդակները մեծ մասամբ հայկական ըլլալէ զատ՝ թէ՛ մզկիթը և թէ՛ ներսի ամպիոնը հայկական ուղղանկիւնի կաթողիկէ գմբէթներով պսակուած են։ Ամպիոնին (Մինպար) վրայ եղած արձանագրութիւն մը ցոյց կու տայ որ ամպիոնը, հաւանաբար նաև մզկիթը



շինած է Ախլաթցի դաւանափոխ Հայ մը(1) (1158 թուին)(2) Մէքքէէն վերադարձին (G. Migeon, Manuel d'Art Musulman. հտ. Բ. 120 Թ. Թորամանեան, Անահիտ, 1911, 21)։

Այս վարպետը՝ իսլամութեան յարած, ինչպէս նաև ուրիշներ, իսլամացած կամ ոչ, կրնային մասնաւոր գնահատութեամբ մը տարուած ըլլալ Գոնիա, ինչպէս երբեմն Պարսիկ արհեստաւորներ բերուած էին, վասնզի անոնք իրենց ճաշակով աւելի լաւ կարող էին զարդարել իրենց շինութիւնները քան տեղացի արհեստաւորները՝ համակեալ Բիւզանդական արուեստին աւանդութիւններով (A. Saladin, նոյն, 446)։ Եւ այս պատճառով է որ Սելջուկեան առաջին յիշատակարանները ունեցած են խիստ չեշտուած պարսկական նկարագիր մը (Նոյն)։

Հրաւիրեալ արհեստաւորներէն զատ կրնային շատ ուրիշներ ալ Թաթարներու արշաւանքին պատճառով թողած ըլլալ իրենց երկիրը և գաղթականութեան մէջ փնտռել իրենց անդորր կեանք մը, երկիրը լքելով բարբարոսներուն, որոնք առանց Հայուն իրենք ալ չապրեցան Հայու արիւնով լուացուած երկիրներուն մէջ, վասնզի անոնք զուրկ էին քաղաքակրթական ընդունակութիւններէ և տաղանդէ, ինչպէս նաև գեղարուեստական հասկացողութենէ։

«Այն օրէն որ Գոնիա հաստատուեցան Սելջուկեանք, իրենց թագաւորութեան բարգաւաճումը ապահովաբար իրեն քաշեց ուշադրութիւնը Սուրիոյ եւ Հայաստանի արուեստագէտներուն, որոնք եկան խառնուեցան Միջագետքի եւ Պարսկաստանի արուեստագէտներուն: Այս է պատճառը այն տարբեր ազդեցութիւններուն, որոնց գոյութիւնը ամէն վայրկեան կը հաստատուի Գոնիայի յիշատակարաններուն մէջ: Երբեմն անոնք իրարու կը յաջորդուին առանց իրարու խառնուելու ինչպէս (Գոնիայի) Սրճալը — Մէտրէսէին մէջ, երբեմն իրարու կը խառնուին ինչպէս (Գոնիայի) Սահիպ-Աթա մզկիթին մէջ եւ յաճախ կ'արտայայտուին խորթ եւ նոյնիսկ աններդաշնակ ընկերակցութեամբ մը, ինչպէս Տիվրիկի մզկիթին մէջ» (A. Saladin, նոյն, 446)։

Հայերը, մասնաւորապէս արուեստագէտները, արդարև շատ մեծ պատճառներ ունէին գաղթելու Սելջուկ Ռումի Սուլթաններու երկիրը։ Անոնք հոն հաւանականութիւններ ունէին գործ գտնելու, մինչ աւելի բարձր մշակոյթ ունեցող տեղերու մէջ իրենց համար կարելիութիւններ չկային։

Ահա թէ ինչո՞ւ Թաթարական արշաւանքէն յետոյ Հայաստանէն դուրս ուրիշ երկիրներու մէջ կը գտնենք դարձեալ զուտ հայկական ոճով կանգնուած մահմետական յիշատակարաններ։

«Թող չզարմանան որ ... Հայաստանի կը վերագրեմ կ'ըսէ A. Saladin (442), ազդեցութիւն մը Սելջուկեան արուեստին վրայ եւ հետեւաբար նաեւ Թուրք արուեստին կազմութեան մէջ: Ամէն ժամանակ, Հայաստան արտադրած է գերազանց որմնադիրներ, վասնզի բոլոր երկրին մէջ կը գտնուի շատ լաւ քար: Արդէն Ժ. դարուն կը յայտնուէր տաղանդը Հայ ճարտարապետներուն(3): Այսպէս երբ 989ին

(1) A. Saladin, նոյն, 539, անոր անունը կը նշանակէ Zizani (= Ցիցանի)։

(2) A. Saladin, 1155 թուականը կը դնէ։

(3) Հմմտ. Schlumberger, Epopée Byzantine II. հտ. 182։

Այ-Սոֆիայի գմբէթը երկրաշարժէն վնասուեցաւ, զայն նորոգելու համար Կ. Պոլիս կոչեցին Տրդատ Հայ ճարտարապետը (որ Սմբատ Բ.ի իշխանութեան ատեն շինած էր Անիի յիշատակարաններուն մեծ մասը): Հետեւաբար, երբ Սելջուկեանք հոն կանգնեցին յիշատակարաններ, դիմեցին տեղական ճարտարապետներու»:

Հոս A. Saladin շեղում մը ընելով՝ Լինչի հետեւողութեամբ որ նոյնը ըրած է իր Armeniaի մէջ, (Ա. հատոր, 384 բնագիր) —հիմնուելով Պրոկոպիոսի De Ædificiis Yustinianiի(1) մէջ ըրած մէկ յիշատակութեան վրայ, ուր կ'ըսուի թէ Յուստինիանոս գեղեցկացուց արեւմըտեան Հայաստանը բազմաթիւ եկեղեցիներով,— կը կարծէ թէ բիւզանդական ճարտարապետութեան՝ տեղական աւանդութեանց, պէտք





ԴՈՎԼԱՆԹ ՃԱՄԻԻ ԵՐԿՈՒ ԴՈՒՌՆԵՐԸ

Սելջուկեան շրջանի արուեստի հրաշակերտ
գործ հաւանօրէն քրիստոնեայ արուեստագէտներու

հարկադրուած նիւթերու, տեղւոյ և կլիմայի պայմաններու ազդեցութեան տակ կրած մէկ բարեփոխումն է, ինչ որ իբր Հայկական ճարտարապետութիւն իր ինքնուրոյն ոճովը ներկայացնել կ'ուզեն Բրոֆ. Յովսէփ Ստրզիգովսկի և ուրիշներ:

Ինչ որ ալ ըլլայ ծնունդը և զարգացման ուղին Հայ ճարտարապետութեան, բոլոր գիտունները, նոյնիսկ Ստրզիգովսկիի հակառակորդները, ինչպէս Շարլ Տիհլ և Ա. Շուազի, կը խոստովանին թէ գէթ դարերու ընթացքին անիկա ստացած է սեփական դրոշմ ու նկարագիր և ներգործած է նոյնիսկ հեռաւոր յիշատակարաններու յատակագիծին վրայ:

ԺԱ. դարուն երբ Սելճուկները առաջին անգամ Հայաստան կը

(1) «Յաղագս շինուածոց Յուստինիանեայ» որ վեց գիրքերէ կը բաղկանար:



մոնէին, արդէն իր զարգացման բարձրագոյն աստիճանին հասած Հայ ինքնուրոյն ճարտարապետութիւն մը գոյութիւն ունէր:

A. Saladin և Լինչ Անիի մէջ կը տեսնեն նախատիպը Ախլաթի իսլամական եզական գմբարաններուն (տես Լինչ Armenia. Բ. հատ. 181 և 182) և Սեբաստիոյ Շահնա-Քումպէթի գմբարանին (կառուցուած 1230 թուականին ըստ M. Max van Berchamի), որոնք յօրինուած են Պահլաւունի իշխաններու գմբարանը եղող և 1047ին շինուած Անիի Ս. Գրիգոր մատուռին ճարտարապետութիւնը յիշեցնող կառուցումով մը (հմմտ. Manuel d'Art Musulman, Ա. հտ. 442):

A. Saladin իր քննութիւնը առաջ տանելով Անիի Առաքելոց եկեղեցիին (շինուած 1031ին) ճարտարապետութեան նմանութիւնները կը գտնէ 1249ին շինուած Ishakliի և 1250ին շինուած Զայի քարուանսարաններու կառուցուածքին զանազան մասերուն մէջ: Եւ այսպէս կը թուէ բազմաթիւ Հայ և Սելջուկ յիշատակարաններ որոնք բաւական աչքի զարնող նմանութիւններ կը բերեն իրարու և որոնց թուումը զանց կ'առնեմ, նկատելով թէ անոնք շատ հեռու կը մնան այն շրջանակէն որով շահագրգռուած եմ, մասնաւորապէս:

Սակայն անուրանալի է որ այդ շրջանակը եւս կրած է Հայ արուեստին ազդեցութիւնը՝ մասնաւորապէս թաթարական արշաւանքներէն յետոյ երբ Հայ արհեստաւորներ խաղաղութիւն որոնելու համար Սելջուկ երկիրներ կ'ապաստանին:

Արդարև ԺԳ. դարէն սկսեալ է որ Հայ ոճը կու գայ զգալի ընել իր գոյութիւնը Սելջուկեան յիշատակարաններու վրայ, շնորհիւ Հայ ճարտարներու և ճարտարապետներու, որոնք իրենց արուեստը կ'արտայայտեն ցեղին ստեղծագործ յղացումով և սերունդներէ ի վեր իրենց կերտած արուեստին ներգործող ազդեցութեան տակ: Այսպէս Հայկական գործ է 1228ին կառուցուած Տիվրիկի մեծ մզկիթը, որուն դուռը հիացման արժանի այնքան ինքնատիպ զարդարանքներ ունի (A. Saladin, նոյն 456): Էվլիա Չէլէպի կը հիանայ մարմարագործին երփներանգ գծանկարին վրայ: Նոյնքան յատակ է Հայկական նկարագիրը Գոնիայի Ինճէ Մինարէլի Մէտրէսէին (կառուցուած 1251ին) և Լարանտայի մզկիթին, երկուքն ալ գործը՝ Քելուք (Kelouk) կամ Գալուստ(1) անուն դաւանափոխ Հայ ճարտարապետի մը ըստ Max van Berchamի և Խալիլ Էտհէմի (տես Saladin նոյն, 456):

Հայ ձեռքը անպատճառ իր բաժինը պէտք է ունեցած ըլլայ նաև Սեբաստիոյ Կէօք-Մէտրէսէի(2) և Պուրճիյէ-Մէտրէսէի շինութեանց մէջ որոնք կատարուած են 1270 և 1271 թուականներուն: Մզկիթին ճարտարապետութիւնը վերագրուած է Գոնիացի ճարտարապետի մը՝

(1) Ճարտարապետը ինքզինքն կ'անուանէ «Գալուստ որդի Ապտալլահի» (A. Saladin, 456): «Որդի Ապտալլահի» բացատրութիւնը մղած է M. M. Huartը որ Տիվրիկի և Սեբաստիոյ մզկիթները ուսումնասիրած է, հետեւցնելու թէ հաւանօրէն այս Հայը որդին է ուրացողի մը, վասնզի ընդհանրապէս իսլամութեան յարողները կը կրէին այս Ապտալլահ անունը:

(2) Կէօք Մէտրէսէի վրայ Գարեգին եպ. Սրուանձտեանց կը խօսի (Թորոս Աղբար, Ա. հտ. 158) և արձագանգ կ'ըլլայ աւանդութեան մը ըսելով թէ «Հայք կը համարին պալատ Սենեքերիմայ»:

վարպետ Գալօժանի(1) և հետևաբար յոյնի մը գործը նկատուած, սակայն թէ՛ Մզկիթին և թէ՛ Մէտրէսէին զարդերուն մէջ աղաղակող հայկական ոճը կը մղեն A. Saladinը (նոյն 456) յայտարարել թէ Յոյն ճարտարապետը հոն գործածած պէտք է ըլլայ Հայ զարդանկարիչ քանդակագործներ։

Կեսարիոյ յիշատակարաններուն մէջ ալ Հայ միտքը իր կառուցողական և զարդարուեստական ձիրքերով ի յայտ կու գայ, որքան որ ալ զայն ընդունիլ կամ խոստովանիլ ուզած չըլլան Կեսարիոյ երկու Թուրք տեղագրողները Խալիլ Էտհէմ և Քէմալէտտին։

Հայ ճարտար ձեռքն էր ուրեմն որ պետութեան մէջ կը մշակէր հողը, կը գործէր մետաքսը և բուրդը, մանր առևտուրով և վաճառականութեամբ կ'զբաղէր և կը կանգնէր հոյակապ շէնքեր։ Ան կեանք կ'ստեղծէր և այդ կեանքը կը գեղեցկացնէր, շքեղութիւն և պերճանք ստեղծելով։ Ան գեղարուեստներու մարզին մէջ ալ յառաջադէմ կը հանդիսանար, մանաւանդ հոն ուր իսլամ կրօնքը իր արգելքովը դէմ կը կանգնէր։

Յայտնի է որ իսլամ կրօնքով արգիլուած է մարդու պատկեր տալ, ըլլայ պաստառի վրայ գծելով, ըլլայ ուէէ նիւթով մը կերտելով։ Ուստի նկարչութիւնը և քանդակագործութիւնը մենաշնորհը մնացին, ինչպէս բոլոր իսլամ երկիրներու նոյնպէս նաև Ռումի Իկոնիոյ Սուլթաններու երկիրին մէջ, քրիստոնէից։

Քէօփրիւլիւ Զատէ Մէհմէտ Ֆուատ պէյ («Թրքաց մէջ պատկերահանութեան պատմութեան մասին» ԻԳՏԱՄ օրաթերթ, թ. 8842) կը վկայէ թէ ըստ ամենայն հաւանականութեան Փոքր Ասիայի քրիստոնեայ նկարիչ մը՝ մականուանեալ Այն-էլ-Տէվլէ, Սուլթանուհի Կիւրճի Խաթունի(2) հրամանով շինած է Մէսնէվի հռչակաւոր Ճէլալէտտին Ռումիի բազմաթիւ կենդանագիրները։ Նոյն ատեն կ'ապրէր ուրիշ անուանի Հայ նկարիչ մը, որուն անունը դժբաղդաբար կ'անգիտանայ Թուրք այս պատմագիրը, որ իր տեղեկութիւնները կու տայ Էֆլաքի վրայ հիմնուելով։ (Արմենակ Սագըզ, «Կ. Պոլսոյ Հայ ոսկերչութիւնը. ԺԸ-ԺԹ դար» ԱՆԱՀԻՏ Ա. տարի 1930 թ. 5)։

Հայերը կը մշակէին նաև քանդակագործութիւնը, ինչպէս տեսնուեցաւ ճարտարապետութեան վրայ խօսուած ատեն, սակայն չէին կրնար զբաղիլ արձանագործութեամբ որ արգիլուած էր խստիւ իսլամական կրօնքին պատճառով։

Զարդերու քանդակումը սակայն ճարտարապետական յիշատակարաններու վրայ յաճախ հայկական արուեստով, անուրանալիօրէն

(1) M. Max Van Berchamի համաձայն ան ճարտարապետն էր նաև Չիֆտէ Մինարէի (Սեբաստիա)։

(2) Հաւանօրէն Թամար։ Եթէ «Խաթուն» Սուլթանուհիներու տիտղոս է, Կիւրճի = Վրացի նշանակելով, Վրացի թագուհիի մը կ'ակնարկէ որ շատ հաւանօրէն Վրաստանի Ռուսուտանի աղջիկը՝ Թամարն էր, որ արդարև ժամանակակից է Ճէլալէտտին Մուհամմէտ Ռումիի, Մէվլէվի Տէվրիշներու հիմնադիրին, որ ծնած էր Թուրքաստան 1195ին և յետոյ անցած Գոնիա ուր ապրած է մինչև 1274, Թամարի ամուսնոյն Ղայասէտտին Կայ Խոսրով Բ.ի (1237–1247) և որդւոյն Ալայէտտին Կայ Խոպաթ Բ.ի (1247–1254) իշխանութեան շրջանին։



գործն էր Հայերու, որոնք կ'երևայ թէ ո՛չ միայն այս արուեստը կը կիրարկէին քարի վրայ աշխատելով այլ նաև փայտի։

Ռումի Սելջուկեան անդրանիկ յիշատակարանին՝ Գոնիայի Ալայէտտինի մեծ մզկիթին Ամպիոնը, փայտի վրայ փորագրութեան հրաշակերտ մըն էր որ Հայ մը՝ Յիցանի անուն շինած էր, ինչպէս ըսուեցաւ։

Այս գործը որուն նմանութիւնները ուրիշ յիշատակարաններու (հմմտ. A. Saladin նոյն, 450) ինչպէս նաև կեսարականներու մէջ ալ տեսնուած են, կրնայ մեզի բերել սա եզրակացութեան թէ ինչպէս անիկա, անոր նմանակներն Հայ արհեստաւորներու գործեր են, հակառակ անոր որ այս ճշդումին համար էական փաստերը չունինք, ուստի միայն անցողակի դիտողութեամբ կը բաւականանանք։

## Է.

## ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԵՒ ԻՄԱՑԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ռումի կայսրութեան ընծայած ապահովութիւնը և անդորրութիւնը, պատճառ եղած են որ ինչպէս բոլոր պետութեան սահմաններու մէջ՝ նոյնպէս նաև Կապադովկիոյ և մասնաւորապէս Արգէոսի շուրջը ապրող Հայերուն մէջ Հայ մտաւոր կեանք մը մարմին առնէ, հայացի հիմի վրայ, ինչ որ անկարելի էր Բիւզանդական տիրապետութեան տակ, ուր շատ շատ կարելի էր «Բարսեղ Մենակեցին» և «Վասիլ Դպրապետին» նման ծառայել Յոյն դպրութեան և գրչութեան արուեստին (տես վերը, 543–544)։

Արդարև այս շրջանին Հայ-Հոռոմ մտաւորականութեան քով ծընունդ կ'առնէ զուտ Հայ մտաւորականութիւն մը, վասնզի 1191էն մինչև 1300, Սելջուկեան տիրապետութեան տակ կը տեսնենք Հայ գրչութեամբ ձեռագիրներ, գրուած Կեսարիոյ և շրջակայից մէջ։ Ասոնցմէ միայն սակաւաթիւ օրինակներ հասած են մեզի դժբախտաբար, այսպէս հազիւ ծանօթ են 1191ին Կեսարիա գրուած և 1206ին Ս. Կարապետ վանքին մէջ գրչագրուած երկու Աւետարաններ, և 1274ին գրուած Աստուածաշունչի մը մասը և 1275ին գրուած՝ Ոսկեփորիկ մը (Ցուցակ Վենետիկի Բ. 872), և 1277րն գրուած՝ ուրիշ Աւետարան մը (յետոյ Գալէճիք փոխադրուած) և ԺԳ. դարուն վերջին տարիները և ԺԴ. դարուն առաջին տարիները գրուած Գէորգ Վրդ. Սկեւռացւոյ Մեկնութիւն Մարգարէին Եսայեայ գործը՝ որ մասնաւորապէս նշանակելի է անոր համար որ Գէորգ Սկեւռացի կամ Լամբրոնացի յայտնի մատենագիր մըն էր որ իր այս գլխաւոր գործը՝ Մեկնութիւն Եսայեան, գրի առած է ՉԽԴ. (=1295)ին, այս ընդօրինակութենէն հազիւ քանի մը տարիներ առաջ (հմմտ. Պատմութիւն Հայկական Հին Դպրութեան Վենետիկ, 1897 էջ 718–723)։

Եւ խիստ նկատելի է որ նշոյլներ և ցոլքեր արձակող Հայ միտք ԺԴ. դարուն սկիզբէն մինչև ԺԵ. դարուն կէսերը յանկարծ կը կասի գործելէ Կապադովկիոյ մէջ և զարմանալի է որ 1300 թուականէն մինչև 1438 թուականը Կապադովկիոյ մէջ գրուած ո՛չ մէկ ձեռագիրի կը հանդիպինք, ապահովաբար իբր հետևանք երկրին մէջ տիրող անիշ-

խանական վիճակին, չփոթներուն և բռնակալութեանց, որոնք ընդհանուր անդրադարձում մը կ'ունենան Կեսարիոյ Հայոց կեանքին վրայ, վասնզի ինչպէս տեսնուեցաւ Կեսարիա 1243ին առաջին անգամ կ'ենթարկուի Թաթարական յարձակման որ յետոյ կը կրկնուի քանի մը անգամներ, վերջ տալով այն հանգիստին որ Հայերը հոն ունէին։

Կիրակոս Գանձակեցի որ մանրամասն նկարագրած էր անոնց պատճառած աւերը Կարնոյ և Փոքր Ասիոյ մէջ (152–155) մի քանի անգամ կը շեշտէ թէ «Քրիստոնեայք որ էին ընդ նոսա զինուորեալք, զբազումս ազատեցին ի գերելոցն, որ յայտնի եւ որ ի ծածուկ, զքահանայս եւ զկրօնաւորս, մանաւանդ մեծամեծ իշխանքն՝ Աւագ եւ Շահնշահ, Վահրամ եւ որդի իւր Աղբուղայն, եւ Խաչենեցիքն, Ջալալն եւ Հասանն, եւ զօրք իւր եւ ազգականք, եւ Գրիգոր Տուփին՝ որդի մօրքուեր Ջալալին եւ այլ իշխանք եւ զօրք նոցին, ըստ կարի իւրեանց...»:

Ինչ որ պատմագիրը ընդհանուր կերպով նկարագրած է, Կեսարիոյ մէջ ալ պատահած ըլլալը, նոյնիսկ իր յիշած պատմական անձերու ձեռքով յիշատակագրուած, մեզի հասած է բացառիկ պատեհութեամբ մը։

Արդարև Կիրակոս Գանձակեցիէ յիշատակուած «Գրիգոր որդի Հասանայ եւ Տուփին» որ մասնակցած էր Թաթարայ արշաւանքին դէպի Կարին և Կեսարիա, Աւագի(1) ղեկավարութեամբ, իր իսկ ձեռքովը նկարագրած է Թաթարաց բարբարոսութիւնները նաև քրիստոնեաներու նկատմամբ և իրենց անզօրութիւնը անոնց յայտնապէս օգնելու համար և կը պատմէ թէ ինչպէս սրբազան սպասներ, խաչեր և ձեռագիրներ ազատեր և բերեր են հայրենիք։

«Բանզի ընդ նոցին (Թաթարաց) տէրութեանն էաք, այլ սակաւուց ոմանց, զոր գնելով հնոցանէ եւ զոր ձեռամբ մերովք թափուցանելով, այլ եւ ըզպաս սրբութեան, զնշանս տէրունականս եւ զսուրբ աւետարանս, ոչ ձեռամբ մերովք առեալ յաւարի, այլ գնեալ ի նոցանէ, բերաք հաւաքական տէրութիւնս մեր զծաղկալից բուրաստան զաւագ տունականն եւ միւս այլ տունական... [մի տողի չափ չի կարդացուիր] եւ զԱւետարանն եւ զաջն սրբոյն Ստեփաննոսի, զոր ի քաղաքէն Կանու [=Իկոնիա] բերաք եւ տուաք ի բնիկ հայրենական սուրբ ուխտս մեր Խաղայի վանից...» (Գարեգին Արքեպ. Յովսէփեան Խաղբակեանք կամ Պռօշեանք Հայոց պատմութեան մէջ, Պատմա–Հնագիտական ուսումնասիրութիւն Մասն Առաջին, Վաղարշապատ, 1928 էջ 24)։

Արդարև «Գրիգոր որդի Հասանայ եւ Տուփին» Աւագ իշխանէն ստանալով երկաթագիր նկարազարդ Աւետարան մը, որ այժմ կը գտնուի Լենինականի Օրթաքիլիսայի եկեղեցին, յիշատակարանին մէջ կը գրէ «այլեւս գնալով ընդ նոսա (Թաթարներուն) եւ ի մայրաքաղաքն Կեսարիայն Կապադովկացւոց նահանգին եւ անտի առեալ զԱւետարանս պարոն իմ Աւագն եւ ես ինձ...»: Եւ ինքն կը նուիրէր նոյն ուխտին 1244 թուականին (տես նոյն, 19)։

Աւետարանը՝ ըստ Գարեգին եպիսկոպոս Յովսէփեանի ինծ տուած տեղեկութեան և իր իսկ ձեռքով ընդօրինակած և ազնուօրէն մեզի տրամադրած յիշատակարանին, Հռոմկլայ գրուած էր 1166 թուականին

(1) Աւագի մասին՝ իբր հակառակորդի Օրբելեանց շատ նպաստաւոր կերպով չի խօսիր այս տան պատմագիրը՝ Ստեփանոս Օրբելեանց (տես Պատմ. Նահանգին Սիսական, 1859, Բարիզ, 150–151)։



մագաղաթի վրայ երկաթագրով։ Նոյնպէս Թաթարներու ձեռքէն և դարձեալ Կեսարիայէն փրկուելով բերուած է ուրիշ շատ մեծարժէք Աւետարան մը, որ այժմ կը պահուի Լեռնային Ղարաբաղի Թալիշ գիւղը(1) (հին Ջրաբերդի գաւառը՝ Արցախի մէջ)։ Տեղացիք զայն կը կոչեն «Բէգունց Աւետարան»։

Այս թանկագին ձեռագիրը, որ գրուած է մեծագիր մագաղաթի վրայ խոշոր երկաթագրով և խորաններով զարդարուած, պէտք է գրչագրուած ըլլայ ամենայն հաւանականութեամբ, ոչ ուշ քան ԺԱ. դարուն Ա. կէսը, գուցէ և Ժ. դարուն վերջերը, և արժէքաւոր է ըստ Գարեգին Արքեպ. Յովսէփեանի գնահատութեան իր մանրանկարչական խորաններով, որպէս արտանկարչութիւն աւելի հնագոյն՝ մինչև Զ–է դարերը հասնող աւանդներու (Նամակ Տ. Գարեգին Արքեպ. Յովսէփեանի, 7 Դեկտ. 1932 թուականով ինծի ուղղուած)։

Այս ձեռագիրը՝ ինչպէս իր անկորուստ մնացած մէկ յիշատակարանէն (բուն գրչութեան յիշատակարանը կորսուած է) կը հասկցուի «ձեռամբ Հասանայ ...(2) Ուզլին որդւոյ» բերուած է «ի Կեսարիոյ»։ Յիշատակարանէն կը հասկցուի թէ Հասան կը պատկանէր Շիրանշահենց տան և աւելոյն իշխանն էր։ Անիկա Աւետարանը կու տայ իրենց «տապանատան» «ի վանս 'ի Բղի(3)» 1264ին(4)։

Այս երկու յիշատակարանները՝ մանաւանդ առաջինը(5) կը հաստատեն թէ ինչպէս Թաթարները անգութ ու բարբարոս վերաբերում մը ունեցած են իրենց արշաւած երկիրներու բնակչութեան նկատմամբ անխտիր։

Թաթարական այս բարբարոսութիւնները Ռումի Սելջուկ պետութեան մէջ գտնուող Հայոց հանգիստը, ապահովութիւնը, անդորրութիւնը և բարգաւաճութիւնը բոլորովին խանգարեցին և ինչպէս կը հասկցուի մեզի հասած յիշատակարաններէ Հայերէն շատեր դարձեալ բռնեցին փախուստի ճամբան, աւելի ապահով վայրեր փնտռելու համար։

Գալէճիքի Հայոց եկեղեցին պահուած Աւետարանի մը յիշատակարանը (որուն պատճէնը իմ քովս է) որոշապէս ցոյց կու տայ թէ 1277ին, այդ թուականին որ Եգիպտոսի Մեմլուք Սուլթանը Պիպարս դէպ ի Կեսարիա կ'առաջանար, Կեսարիայէն ոմանք խոյս տուած և Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան երկիրները ապաստանած են։

Գալէճիքի Աւետարանին յիշատակարանին գրիչը Յովսէփ քհնյ. կը պատմէ թէ իր հայրը նահապետ նահատակուած է Կեսարիա, ուր ձեռնարկած էր ինքն գրել այս գիրքը, «Ի դառն ժամանակի, յորում

(1) Թարթար գետին հովիտին մէջ կը գտնուի գիւղը։

(2) Ջրոս տառ անընթեռնելի։

(3) Մակար եպ. Բարխուդարեան կը կարդայ «ի վանս Եղիշէի» (տես Արցախ, 226–227)։

(4) Բարխուդարեան եպ. կարդացած է ՉԺԵ. մինչ Յովսէփեան Արքեպս. ՉԺԳ.։ Ես երկրորդը աւելի վաւերական նկատեցի։

(5) Այս երկու յիշատակարանները՝ Գարեգին Արքեպ. Յովսէփեանի խնամով ընդօրինակուած կու տամ յաւելուածին մէջ իրենց կարեւորութեան պատճառով։

եկն երկրորդն Փառաւոն(1) խրոխտալով ի քաղաքս Կեսարիա եւ անիւ մեծաւ ըմբռնեցան քրիստոնէայք ամենայն եւ նկուն դարձեալ գնաց յաշխարհն իւր եւ ի ճանապարհին սատակեցաւ ի թուականութեանս Հայոց ՉԻԶ ն» (= 1277):

*Գրիչը կը խնդրէ* «անմեղադիր լինիլ սխալանացն եւ խոշորութեանս, **զի օր ըստ օրէ փախչէաք վասն հալածանաց անօրինաց եւ ի ծերպս վիմաց մտանէաք** յաղագս ծովացեալ մեղաց իմոյ ...»:

*Բ. յիշատակարանին մէջ նոյն քահանան իր այս ձեռքի աշխատութիւնը որ* «բազում քրտամբ ի դառն եւ յանբարի ժամանակիս» *աւարտած էր Հայոց ՉԼԱ (= 1282 թուին), Կեսարիայէն դուրս Կիլիկիա հաստատուած կը գտնենք* «ի քաղաքն Եգիոյ, որ է Այաս»:

*Սակայն հոն ալ հանգիստ չի գտներ վասնզի* «եղեւ *կ'ըսէ* յանկարծակի շփոթականաց ոմանց իսմայելացւոց, որ յայնմ ժամանակի չլուէին զերկիրն, յարձակեցին ի քաղաքն Այաս եւ որ շուրջ զնովաւ, գիւղք եւ աւանք, զբազումս գերեցին եւ զայլս սրախողխող արարին, ընդ որս պատահեցաւ եւ քահանայ Յովսէփ եւ կատարեցաւ սրով, յամսեանն Դեկտեմբերի ԻԲ. ... »:

*Դժբաղդաբար բարբարոսական խժդժութիւնները պիտի թոյլ չի տային որ Փոքր Ասիայէն Կիլիկիա ապաստանած Հայեր հոն մնային և տակաւին Հայ թագաւորութիւնը վերջ չգտած իսկ, շատ մը Հայեր, մանաւորապէս ԺԳ. դարուն վերջին քառորդէն սկսեալ արեւմտեան Փոքր Ասիոյ զանազան քաղաքները փոխադրուած կը տեսնենք։*

*Ճիշդ այդ շրջանին է որ Անկիւրիա, և մերձակայ Սթանոզ, Գալէճիք և Պոլու և այլ քաղաքներ օրինակի համար կ'ընդունին Կիլիկեան շրջաններէ Հայ գաղթականներ, ինչպէս կը հաստատուի նոյնիսկ 1227ին Կեսարիա գրուած և 1282ին Այաս գտնուած այս Աւետարանին Գալէճիք տեղափոխումէն, 1290ին Լամբրոնի վանքին մէջ գրուած Աւետարանի մը Սթանոզի Հայ եկեղեցին փոխադրուած, և Գաղատիոյ վիճակին մէջ՝ նախ քան ընդհանուր պատերազմ գտնուած 60էն աւելի ձեռագիրներուն, մեծ մասամբ Կիլիկեան վանքերուն մէջ գրչագրուած ըլլալէն։*

*Անկարելի է որ Կեսարիոյ Հայերն ալ Յովսէփ քհ.ի պէս, որ խոյս տուած էր այդ քաղաքէն, մեկնած և ցրուած ըլլան այլեւայլ կողմեր, և այսպէս անչքացած ըլլայ Հայ տարրը այդ մեծ քաղաքին մէջ, ուր Սելջուկեանց տիրապետութեան շրջանին, ինչպէս պետութեան միւս մասերուն մէջ, կը փայլէր իբր յաջողակ վաճառական, ժիր մշակ, աշխոյժ գործաւոր, հնարամիտ, նախաձեռնակ ու գործունեայ տարր մը, երկրին ու պետութեան օգտակար ցեղ մը, և այս իսկ պատճառով կը վայելէր պաշտպանութիւնը, հոգածութիւնը և խնամք Սուլթաններու և ունէր բաւական բարգաւաճ վիճակ մը։*

(1) *Հաւանօրէն կ'ակնարկէ Եգիպտոսի Մեմլուք Սուլթան Պիպարսին* (1260-1277)։



ԺԴ.

# ԿԵՍԱՐԻԱ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԸ
# ԶԱՆԱԶԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՑ ԵՆԹԱՐԿՈՒԱԾ

**(1301 — 1471)**

*Սելջուկեանց Ռումի կարգաւորեալ պետութեան կործանումէն մինչև Օսմանեան տիրապետութիւնը, անցնող մօտաւորապէս երկու դարերու ժամանակամիջոցը կատարեալ խառնակութեան շրջան մը եղաւ, ուր պզտիկ իշխանութիւններ և հզօր պետութիւններ իրարու ձեռքէ յափշտակեցին Կեսարիան, Փոքր Ասիոյ այս երբեմնի բարգաւաճ ու փառաւոր քաղաքը, որ այս շրջանին մատնուեցաւ անշքացման։*

*Այս ժամանակաշրջանին ո՛չ մէկ իշխանութիւն հոն տեւական կեանք կ'ունենայ, այլ երկիրը կը յափշտակուի իրարու ձեռքէ և արիւնահեղութեանց թատերավայր կը հանդիսանայ, մինչև որ մրցակից ուժերուն ամէնէն զօրաւորը՝ Օսմանեան Թուրքերը կը տիրեն Կեսարիոյ և հոն վերջնականապէս կը հաստատուին։*

## Ա.

## ԿԵՍԱՐԻԱ ԹԱԹԱՐ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

**(1308 — 1326)**

*Ռումի Սելջուկեան վերջին Սուլթանին սպանութենէն յետոյ* (1307) *իր պետութիւնը բաժան բաժան եղաւ և բոլորովին կազմալուծուեցաւ։*

*Մէկ կողմէն Սելջուկեանց հպատակ պէյերը անկախութիւն հռչակեցին, և կազմեցին տասը անկախ իշխանութիւններ, միւս կողմէն պետութեան արեւելեան մասերը ենթարկուեցան Թաթարական տիրապետութեան։*

*Կեսարիա, կը գտնուէր այս վերջին բաժինին մէջ, ուստի կառավարուեցաւ Թաթար կուսակալներով, որոնց իշխանութիւնը կը տարածուէր բովանդակ Արեւելեան Անատոլուի վրայ։*

*Առաջին Թաթար զօրավարը որ այս կողմերուն իշխած է կը թուի ըլլալ Թիմուրթաշ որ Սմբատ Գունդստապլ* (129) «Հոռոմոց պարոն» *տիտղոսով կը յիշատակէ։ Այս կուսակալը որուն Սամուէլ Անեցիի* (167) *շարունակողը* «չար» *տիտղոսը կու տայ, կը մտնէ Կիլիկիա* «առ ի բառնալ զքրիստոնէութիւն» (*Սմբատ*) *և* «սիրելոյ աղագաւ» (*Սամուէլ*) *և* «նստաւ Գ, օր առջեւ Սսոյ՝ այլ անկեաւ ի Տեառնէ տագնապ նորա եւ զօրացն նորա եւ յելանելն բազում գերի տարան ընդ ինքեանս եւ զբազումս սպանեն» (*Սամուէլ*, 167) *և ապա* «ել ամաչեցեալ եւ գնաց» (*Սմբատ*, 129) *Կեսարիոյ համ-*

բով մեծ Հայաստան (տես Յ. Մանանեան և Հ. Աճառեան Հայոց նոր վկաները, 1903, Էջմիածին, 122)։ Այս արշաւանքը ըստ Սամուէլի 1317ին և ըստ Սմբատի 1321ին (աւելի հաւանական) պատահած է։

Անկէ յետոյ կը թուի թէ Թիմուրթաշ ապստամբած է, վասնզի 1323ին «եկն Զօպանն ի Հոռոմս ի խնդիր Տամուրտաշին» (Սամուէլ, 167) թէև շարունակութեան մէջ «Զօպանն փախեաւ» (Նոյն) կ'ըսէ, սակայն պէտք է շփոթութիւն մը ըլլայ վասնզի քիչ յետոյ կը հաստատէ թէ Զօպան «զաշխարհն ի ձեռն ունէր»։ Քէմալէտտին (234), անշուշտ իսլամ պատմիչներէ քաղելով, կ'ըսէ թէ Կեսարիոյ և շրջակայից տիրած է Իլխանիններու ընտանիքին կողմէ կարգուած էմիր Զօպան, որ կրցաւ բաւական ընդարձակ իշխանութիւն մը հիմնել շրջակայ երկիրները նուաճելով (Նոյն)։ Ըստ Սամուէլ Անեցիի շարայարողին (167) Պուսայիտ (= Ապուսայիտ) «վերացոյց ... զԶօպանն ... եւ մեռաւ ի փախչիլն» (1325)։ Իրեն կը յաջորդէ որդին՝ Թիմուրթաշ որ իր իշխանութեան սկիզբը կը հպատակէր Իլխանիններուն, սակայն յետոյ ապստամբեցաւ և ծանր խառնակութեանց պատճառ եղաւ (Քէմալէտտին, Նոյն)։ Մեր պատմիչները զայն կը յիշեն շփոթ պարագաներու մէջ։ Սամուէլի Շարայարողը կ'ըսէ թէ 1325ին Զօպանի «որդի ... Տամուրտաշն եկն ի վերայ Եզնկային երկրին եւ դարձեալ փախեաւ ի Մսր եւ անդ սպանաւ ի Սուլտանայ» (167)։ Իսկ քիչ մը վարը (168) 1339ին «Խաւրեցին զԵզնկան Թամուրտաշն էր որդի նորա փոքր Շէխ Հասանն» կ'ըսէ և նոյն թուականով «եկն Շէխ Հասանն որդի Տամուրտաշի ի վերայ Եզնկին եւ համբաւ հանին թէ Տամուրտաշն ելեր է ի Մսրայ եւ ի հետէ նստաւ ՂԸ օր» (Նոյն)։

Այս իրար հակասող տողերէն և Սմբատի մէկ ուրիշ յիշատակութենէն, յայտնի է թէ Թիմուրթաշի 1325ին Երզնկայի վրայ յարձակումը շփոթութիւն մը պէտք է ըլլայ։ Հաւանօրէն 1325ին իր իշխանութիւնը ձեռք բերելէն յետոյ ապստամբած է 1328ին, և իր որդւոյն Շէխ Հասանի հետ յանդգնած է մինչև Երզնկա առաջանալ, սակայն «ամբարհիշտ պարոնն Հոռոմոց Տամուրտաշն» երբ կ'իմանայ թէ Մոնկոլներու խանը կու գայ «փախաւ եւ գնաց առ Սուլտանն Մսրայ Մելիք Նասրն(1) եւ կամէր նովաւ կռուել ընդ ազգն իւր եւ ընդ թագաւորն Հայոց Լեւոն։ Նա Աստուած խափանեաց զինքն եւ զհամախոհս իւր։ Եւ յետ ութ ամսոյ եսպան զինքն Սուլտանն եւ զգլուխն յուղարկեաց առ Պուսայիտ Խանն» (Սմբատ, 131)։ Քէմալէտտին (234) կը հաստատէ թէ Թիմուրթաշ Եգիպտոսի մէջ գլխատուած է 1321ին(2) և այսպէս վերջ գտած է իր իշխանութիւնը։ Սակայն շատ վաւերական չի թուիր իր իշխանութեան ալ վերջ գտած ըլլալը, վասնզի Սամուէլ Անեցիի շարունակողը (168) կը հաւաստէ թէ 1339ին Թիմուրթաշի որդին Շէխ Հասանին վրայ գացած է Ուսլու Բէկն և Շէյխ Հասան եկած է Երզնկայի վրայ, զրոյց հանելով թէ Թիմուրթաշը Եգիպտոսէն եկած է։ Շէխ Հասան պաշարած է 98 օր Երզնկան։ Շէխ Հասան իր կնոջմէն կ'սպանուի (Սամուէլ, 168) և իրեն կը յաջորդէ իբր Խան՝ Մելիք Աշրաֆն «որ էր եղբայրն Շէխ Հասանին» (Նոյն)։ Նոյնիսկ 1364ին կը յիշուի Թիմուրթաշ Գ. մը, որդին Աշրաֆին

(1) Նասըր Մուհամմէտ Եգիպտոսի Սուլթանը (1293-1341)։

(2) Այս թուականը անշուշտ սխալ է, ինչպէս նախընթաց պարագաներէն կը հասկցուի։



որուն համար ժամանակագիրը կ'ըսէ թէ «եկն ի վերայ երկրիս, որ զայր տիրէր Թախտին եւ եկեալ Արծկէ սպանաւ»։

Իմ տեսութեամբ հաւանօրէն Շէխ Հասանի իշխանութիւնը ձեռք բերելէն յետոյ Կեսարիա և շրջակայքը այս իշխանութեան ձեռքէն ելած պիտի ըլլան. վասնզի այդ շրջանին հոն տեղաւորուած կը տեսնենք ուրիշ իշխանութիւն մը։

## Բ.

## ԱԼԱՑԷԴԴԻՆ ԱՐԹԻՆԱ ՊԷՅԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## (1326 - 1381)

Թիմուրթաշի յաջորդեց իբր Թաթարական Անատոլուի կուսակալ Ալայէտտին Արթինա պէյ։ Այս կուսակալը յաջողութեամբ կառավարեց Անատոլուն (Քէմալէտտին, 234)։

Մոնկոլներու Ապու Սայիտ կամ մեր պատմիչներուն Պուսայիտ խանը (1317-1334) երբ մեռաւ Մոնկոլ մեծ կայսրութիւնը ո՛չ միայն քայքայուեցաւ այլ մատնուեցաւ կատարեալ անիշխանութեան, մինչև որ Թիմուրլէնկ կամ Լէնկթիմուր (1360-1405) իր հզօր ձեռքով վերակազմեց Թաթարական մեծ պետութիւնը։

Ապուսայիտի մահէն յետոյ (1334) իրեն յաջորդեց Արփա խան, որուն համար կ'ըսուի թէ քրիստոնեայ էր և թերեւս այս պատճառով իր քեռին Ալի փաշա, զայն սպանեց վեց ամսուան իշխանութենէ մը յետոյ, և Մուսի անուն անզօր մէկը խան անուանեց և ինքն առաւ պետութեան ղէկը ձեռքը և քրիստոնէից դէմ սաստիկ հալածանք ի գործ դրաւ (Սամուէլ Անեցի, 159) սակայն իր իշխանութիւնը երկար չտեւեց և 1336ին սպանուեցաւ Խալիթ աղայէ մը, որ Ապուսայիտին որդին Հասան խանը գահ բարձրացուց (Ազգապատում, 1855-1856)։ Ասոր իշխանութիւնը իբր թէ ճանչցուեցաւ, սակայն իրականութեան մէջ տէրութիւնը բազմաթիւ ինքնիշխան խաներու միջեւ բաժնուեցաւ և անիշխանութիւն տիրեց։

Այս անիշխանութեան շրջանին Արթինա պէյ, ինքզինքը կը ձերբազատէ Թաթար խաներու իշխանութենէն և կը մտնէ հովանաւորութեան տակ Եգիպտոսի Սուլթանին (Քէմալէտտին, 234) որ էր Նասըր Մուհամմէտ (1293-1341)։ Արթինա պէյ որ Հայերը կ'երեւայ թէ կ'արտասանեն «Ցարաթնան», օգտուելով առիթներէն, հաւանօրէն հետըզհետէ ընդարձակած է իր երկիրները, ինչպէս Սամուէլ Անեցիի շարայարողներէն մէկը կը յիշատակէ (168) ըսելով 1339(?)ին, «Ցարաքնանն խսարեաց զՍեւաս, մինչ ի սովու նեղեալ տուին զքաղաքն»։ Իսկ երբ Եգիպտոսի Սուլթանը մեռաւ Արթինա (Արթինա-Էրթէնա) անկախութիւն հռչակեց և կազմեց իշխանութիւն մը որուն մայրաքաղաքն էր Կեսարիա (1341)։

Արթինա պէյ, որ ժողովուրդը կը կոչէր Քէօսէ Բէյղամպէր (Գօշ Մարգարէ), արդար մէկը կ'երեւի ըլլալ և իր իշխանութիւնը մեծ գոհունակութեամբ ընդունուած է իր հպատակներէն, որով կրցած է իր իշխանութեան տակ պահել մինչեւ իր մահը՝ Արգէոսի շրջանակը։

*Արթինա պէյ մեռաւ 1351ին Կեսարիոյ մէջ և թաղուեցաւ քաղաքին Քէօշկ Մէտրէսէին մէջ։*

*Իր մահէն յետոյ իր երկիրը կը կառավարեն իր որդին* Մէհմէտ Պիճի Արթինա *և իր կինը՝* Սուլի Սուլթան:

*Ասոնց մահէն յետոյ Արթինայի կրտսեր զաւակը չափահասութեան հասած չըլլալով, երկիրը ենթարկուեցաւ դատաւոր* (= *Դատը*) *Ահմէտ Պուրհանէտտինի խնամակալութեան* (1381), *որ ի վերջոյ երկրին տէր դարձաւ։*

## Գ.

## ԴԱՏԸ ԱՀՄԷՏ ՊՈՒՐՀԱՆԷՏՏԻՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## ( 1381 — 1392 )

*Դատը Ահմէտ Պուրհանէտտին*(1), *իմաստուն և քաղաքագէտ անձնաւորութիւն մըն էր, որ իր պետութիւնը կազմեց երբեմն Թաթարներու հնազանդող Թաթար և Թիւրքմէն իշխանութեանց բեկորներէն* (*Համմէր*)։

*Երբ Արտման՝ Թիւրքմէններու իշխանը մեռաւ, իր տէրութիւնը բաժնուեցաւ իր պէյերուն միջև։ Թոգաթը գրաւեց Հաճի Ճէչդի, Ամասիան՝ Շէյխ Մէհիք և Սեբաստիան՝ Ահմէտ Պուրհանէտտին որ տիրող անիշխանութենէն օգտուելով գրաւեց նաև Թոգաթը, Ամասիան, Կեսարիան և ուրիշ քաղաքներ և կազմեց Փոքր Ասիոյ Արեւելեան ծայրը բաւական զօրաւոր իշխանութիւն մը* (Համմէր, *գիրք Զ.*, Պատմ. Սեբաս. *էջ* 207)։

*Քէմալէտտին* (234) *կ'ըսէ թէ Պուրհանէտտին Կեսարիան գրաւած է 1381ին։*

*Պուրհանէտտին և իր որդին Ապուլ-Աբբաս որովհետև ապաւէն ընծայեր էին Կեմիանի և Մէնթէշէի գահընկէց իշխաններուն, իրենց վրայ հրաւիրեցին Սուլթան Պայազիտ Եըլտըրըմ՝ Օսմանեան վեհապետին թշնամութիւնը։*

*Թշնամի էր իրենց նաև Գարա Եուլուք* (*Սև Տզրուկ*) *կամ Գարա Օսման որ Պայընտըր նոր տոհմին կամ Աք-Գոյունլու Թիւրքմէններու պետն էր և թէպէտ առաջինին չափ զօրաւոր չէր, բայց անկէ աւելի վտանգ կ'սպառնար, աւելի մօտ գտնուելով*(2)։ *Այս պարագաներուն մէջ, ինչպէս կ'երեւայ առանց մեծ վտանգի կնքեց Ահմէտ Պուրհանէտտին իր կեանքը խաղաղութեամբ։*

*Իրեն կը յաջորդէ իր որդին Ապուլ Աբբաս Պուրհանէտտին։*

*Ասոր օրով Սուլթան Պայազիտ կը նուաճէ Գարամանը և իր վէզիրը Թիմուրթաշ անցնելով Ալիսը, կը գրաւէ Զանկըրը, Տիվրիկը, Շապին-Գարա-Հիսարը, Տարենտէն, Պեհեսնին, Մալաթիան, Կամախը, Երզնկան և Պայպուրդը* (*Համմեր Զ. գիրք*)։

---

(1) *Պուրհան Ղազի անունով ալ յիշուած է։ Պուրհանէտտին՝ կը նշանակէ* փորձ հաւատոյ:

(2) *Աք-Գոյունլուներու մայրաքաղաքն էր նախ Տիարպէքիր, յետոյ Սեբաստիա եղաւ։*



*Ապուլ Աբբաս Պուրհանէտտին երբ կը տեսնայ որ ամէն կողմէ պաշարուած է խոյս կու տայ Խարբերդի լեռները* (*Այվազովսքի*, Պատմ. Օսմ. *Ա. էջ* 54)։

*Ոմանք կ'ըսեն թէ սպանուած է 1392ին Պայազիտի դէմ կռուած ատեն* (*Զամ. Դ. հտ.* 432)։ *Իսկ ուրիշներ կը գրեն թէ սպանուած է 1398ին Գարա-Եուսուֆ Գարա-Գոյունլուէն* (1390-1421) (*Համմեր, գիրք ԺԵ. առնելով Հաճի Խալիֆէն*), *իսկ ա՛լ աւելի ուրիշներ զայն սպանըւած ցոյց կու տան 1399ին Աք-Գոյունլու Գարա Օսմանէն* (Քէմալէտտին, 234, *Այվազովսքի*, Պատմ. Օսմ. *Ա.* 54), *որ Տիարպէքիրը և Խարբերդը իր իշխանութեան տակ ունէր։ Գալով իր երկրին անիկա կ'անցնի Օսմանեան Սուլթանին, վասնզի Գարա Օսման հրաւիրեց Պայազիտը որ խաղաղութեամբ անոր բոլոր երկիրները առնայ* (Այվազովսքի, *նոյն*) *ինչ որ շատ ճշմարիտ չի թուիր, նկատի առնելով Աք-Գոյունլուներու առաջին օրէն կատաղի հակառակութիւնը Օսմանցիներու դէմ։*

*Ուրիշներ կը պատմեն թէ Սուլթան Պայազիտ Ապուլ Աբբասի մահէն յետոյ ուզած է անոր Զէյն-էլ-Ապէտին որդիին թողուլ հօրը երկիրները, բայց տէրութեան երեւելիները աւելի խոհեմութիւն համարած են երիտասարդ իշխանը զրկել իր աներոջ՝ Զիւլգատր տոհմի պետ Նասրէտտին իշխանին քով, որ մօտ էր և հրաւիրել Սուլթան Պայազիտը, որ գայ տիրէ իրենց երկրին։*

*Սուլթան Պայազիտ ընդունելով սիրով այս հրաւէրը կը գրաւէ խաղաղութեամբ Սեբաստիա մայրաքաղաքը, Թոգաթը և Կեսարիան իրենց շրջանակներով* (Պատմ. Սեբ. 211)։

*Այսպէս Կեսարիան անցաւ Օսմանեան տիրապետութեան ըստ Համմերի 1392ին, ըստ Դուկասի 1394ին և ըստ Հաճի Խալիֆէի 1398ին, թէև բոլորովին անհամաձայն վերագրեալ պատմութիւններուն ըսողներ կան թէ Ապուլ Աբբաս իր իշխանութիւնը շարունակած է մինչև 1402 և Լէնկթիմուրի արշաւանքին ատեն անոր զօրութեան չկրնալով դիմակալել Եըլտըրըմ Պայազիտի քով ապաստանած և իր երկիրը անոր թողած է։*

## Դ.

## ՕՍՄԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## ( 1392 — 1393 )

1227*ին Անդրկասպեան երկիրներէն կը մեկնի Թուրք զանգուած մը Եփրատի կողմերը հաստատուելու մտքով և բաւական ժամանակ թափառելէ յետոյ զանազան վայրեր կը տեղաւորուի Իկոնիոնի Սուլթանութեան սահմաններուն մէջ։*

*Գաղութին մէկ մասը ետ կը դառնայ և միւս մասը կը մնայ նոյն տեղը և Ռումի Սուլթանութեան մատուցած իր ծառայութեանց ի վարձ կ'ստանայ Սէօյիւտի գաւառը շուրջ 1242ին։ Էրթողրուլ էր այդ ճիւղին պետը, որդին առաջին գաղութին գլուխ եղող Սիւլէյմանի, որ յաջողեցաւ իր սահմանները հետզհետէ ընդարձակել, մանաւորապէս յոյներէն քաղաքներ և բերդեր առնելով և բաւական զօրաւոր դիրք մը ձգեց իր որդւոյն՝ Օսմանի, երբ մեռաւ 1281ին։ Օսման աւելի*

ձեռներէց քան իր հայրը, աւելի ընդարձակեց իր իշխանութիւնը Իկոնիոյ Սուլթաններուն հովանաւորութեամբ, այնպէս որ երբ 1294ին Իկոնիոյ Սուլթանութիւնը նուաճուեցաւ Թաթարներէն և տասը մանր իշխանութիւններ կազմուեցան (տես վերը, 561) Օսմանի իշխանութիւնը շատերէ աւելի զօրաւոր էր։

Օսման որուն անունով այս պետութիւնը կոչուեցաւ «Օսմանեան», Գարաճա Հիսարի աննշան կեդրոնով պարզուկ իշխան մըն էր որ Սելջուկեան իշխանութեան օրհասի օրերուն, ինքզինքն անկախ հռչակեց 1299ին և դարձաւ Սուլթան կամ Փադիշահ և յաւակնեցաւ Իկոնիայի Սուլթաններուն յաջորդութեանը։ Օսման, որ հասարակ աշիրէթապետ մըն էր և վերարկուէ մը, ապարօշէ մը, դգալէ մը, աղամանէ մը, քանի մը ձիերէ և ոչխարներէ զատ ոչ մէկ հարստութիւն ունէր, գործակցութեամբ իսլամացած դաւաճան Յոյնի մը՝ Քէօսէ Միխալի, ընդարձակեց իր սահմանները Բիւզանդական կայսրութեան ասիական գաւառները գրաւելով և Պրուսան իրեն մայրաքաղաք ընելով (1324)։

Իրեն յաջորդեց որդին՝ Օրխան Ա. (1326–1360) որ տիրեց Նիկիոյ և Նիկոմիդիոյ, ինչպէս նաև Քիոս կղզիին և Կիւզիկոնի թերակղզիին և անցնելով Տարտանէլէն Կէլիպոլուն իրեն կռուան ըրաւ և Նեղուցին մերձակայ հողերը գրաւեց և նոյնիսկ սպառնաց Կ. Պոլսոյ։ Նշանաւոր եղաւ մասնաւորապէս իբր պետութեան կարգաւորիչ իր Ալայէտտին եղբօրը ձեռնտուութեամբ։ Մուրատ Ա. (1360–1389) հռչակուեցաւ իբր աշխարհակալ տարածելով իր իշխանութիւնը մինչև Դանուբ և նուաճելով Թրակիան, Մակեդոնիան և Ալպանիան։ Ասոր որդին էր Պայազիտ Ա. (1389–1402) որ մերթ Ասիոյ և մերթ Եւրոպայի կողմն արագաշարժ արշաւանքներով Եըլտըրըմ (= կայծակ) մականունը ստացաւ։ Անիկա նուաճեց Փոքր Ասիոյ Թուրք իշխանութիւնները, ի մէջ այլոց Դատը Պիւրանէտտինի իշխանութիւնը, և առաջին անգամ Արգէոսի շրջանը Օսմանեան տիրապետութեան ենթարկեց, գոնէ ժամանակաւոր կերպով։

Ասիական ցամաքին վրայ Օսմանեան նուաճումներուն գլխաւոր դերակատարը՝ Թիմուրթաշ, բովանդակ Փոքր Ասիան, մինչև Հայաստանի սիրտը Պայազիտ Ա.ի իշխանութեան ենթարկելէ յետոյ, Սուլթանը դարձաւ Եւրոպա իր նուաճումները շարունակելու համար։

Այս պատեհութենէն օգտուելով Գարաման Օղլու Ալի պէյ ապըստամբեցաւ երրորդ անգամ 1392ին և գրեթէ Փոքր Ասիան իր տիրապետութեան ենթարկեց և հասաւ Պրուսայի մօտերը և յարձակեցաւ Օսմանեան զօրքերուն վրայ և զանոնք փախուստի մատնեց և Փոքր Ասիան նուաճող Թիմուրթաշ պէյլէր պէկին գերի բռնեց։ Այս առթիւ Կեսարիան առաջին անգամ ըլլալով ենթարկուեցաւ Գարամանեանց տիրապետութեան։

Պատմագիրներէն ոմանք կը կարծեն թէ Սուլթան Պայազիտ Ա. Կեսարիան տուած է Աբուլ Աբբաս Պուրհանէտտինի սպանիչ Թիւրքմէն Գարա Օսմանի. ինչ որ շատ հաւանական չէ, վասնզի Գարա Օսման ըստ Համմէրի հպատակած էր Թիմուր Լէնկի և անոր համար պատերազմած էր Դարա Դոյունլու Թիւրքմէններու պետ Գարա Եուսուֆի, Եգիպտացի իշխաններու, և վերջապէս Աբուլ Աբբաս Պուրհաննէտտինի դէմ, զոր գերի բռնելով սպանած էր։



# Ե.

## ԳԱՐԱՄԱՆԵԱՆՑ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

## (1393)

Սելջուկեան վերջին Սուլթանին սպանութենէն յետոյ (1307) ինչպէս ըսի, իրեն ենթակայ Պէյեր անկախ դառնալով կազմած էին տասը պետութիւններ (տես վերը, էջ 561)։ Այս տասը իշխանները արեւելեան պատմագիրներէն կը կոչուէին «ժողովուրդներու թագաւորներ» (Asie Mineure, էջ 524) և կը գրաւէին Սելջուկ Սուլթանութեան արեւմտեան մասերը։

Այս պետութիւններն էին.

Գարասի (մայրաքաղաք Պերկամա), Սարուխան, Այտըն, Մէնթէշէ, Թէքքէ, Համիտ, Գարաման և Խիւտավէնտիկեար կամ Օսման, ամէնքն ալ կոչուած իրենց առաջին վեհապետներուն՝ իսկ միւս երկուքը Կէրմիան (Քէօթահեայի շրջակայքը) և Գասթէմունի, իրենց գրաւած երկիրներուն անուններով։

Ահա այս իշխաններէն Գարամանի յաջորդներէն մին էր որ 1393ին կը տիրանար Կեսարիոյ, որուն պատմութեան մէջ կարեւոր և ճակատագրական դեր մը պիտի կատարէր։ Գարամանեանց ծագումը կը հասնի մինչև Թաթարաց արշաւանքներու սկիզբը, որ ատեն խումբ մը Թիւրքմէններ կը մտնեն Էրմէնէկ և կը խնդրեն տեղւոյն Քրիստոնեայ տէրերէն երկրագործութեամբ զբաղիլ, տասանորդ տալու խոստումով (Սիսուան, էջ 290)։

Քիչ յետոյ 1228ին Ռումի Սելջուկ Սուլթան Ալայէտտին Կայ Քոպատ Ա. (1220–1236) Կիլիկիոյ Հայ թագաւորութենէն կը գրաւէ անոր արեւմտեան ծայրագաւառը՝ Գերմանիկուպոլիսը (Էրմէնէկ) և կուտայ իր զօրավարներէն Քէմէրէտտինի և երկրին պահպանութեան համար հոն կը բնակեցնէ Թիւրքմէն բաւական թուով ընտանիքներ, ինչպէս սովորութիւն էր ընել ամէն նոր գրաւուած երկիրներու համար։

Ասոնցմէ մէկն էր Նուրէ-Սուֆի(1) ածխագործը, որուն համար Համմէր կ'ըսէ թէ ազգաւ Հայ էր(2) (Համմէր, Ե. հատ. էջ 246)։ Ան շատ անգամ ածուխ վաճառելու համար Գարաման կ'երթար և այսպէս կամաց կամաց կը հարստանար։ Ասոր երկու որդիքը՝ Գարաման և Օնկսուզ կամ Պօնսուզ, Թաթարներու արշաւանքին վրդովումներէն օգտուելով կ'սկսին յելուզակային գունդեր կազմել և աւազակութեամբ զբաղիլ, կողոպտել կարգ մը գաւառներ և բռնանալ։ Անոնք խաբէ-

(1) Ալիշան Սիսուանի մէջ (էջ 293) այսպէս գրած է, Larousse բառարան Բ. հտ. էջ 489, հաւանօրէն աւելի ճիշդ, Նուր-Եուսուֆ կ'ուղղագրէ։

(2) Ոչ մէկ Հայ պատմիչ արձագանգ եղած է այս տեսակ իրողութեան մը, սակայն թերեւս զարմանալի թուի եթէ ըսենք թէ Մեսրոպ Երէց «Պատմութիւն Մեծին Ներսէսի» գործին մէջ Գարաման անուն Վրացի իշխան մը կը յիշէ (տես Տաշեան, Մայր ցուցակ, էջ 802)։

ութեամբ կը տիրանան Սելեւկիոյ և Նուրէ Սուֆիի խնդրանքին վրայ Ալայէտտին Սուլթան կատարուած իրողութիւնը կը հաստատէ (Սիսուան, 285), բայց երբ Աւէտտին Կայ Քաւուզ (1247–1266) տեսաւ թէ անոնք աւելի կ'ընդարձակեն իրենց ասպատակային գործունէութիւնը, նախամեծար համարեց 1257–1258ին Գերմանիկուպոլիսը տալ անոնց իբր ժառանգական երկիր և մեծ եղբայրը՝ Գարամանը անուանել Պէկ-Էրմէնէկի (Սիսուան, 290–293)։

Գարաման՝ որ ազատութիւն ստացած էր շրջակայ երկիրներէն գրաւումներ ընելու, յարձակեցաւ դրացի Կիլիկիոյ Հայոց թագաւորութեան վրայ և ասպատակեց անոր երկիրները իր Թիւրքմէններով և անոր պատճառեց դժուարութիւններ (տես Սիսուան, 293, 4, 33 և 196)։

Այս պատերազմներուն մէջ կ'սպանուին Գարաման և իր եղբայրը՝ Օնկուզ (1262ին) (Սիսուան, 294) և իրենց որդիքը Իկոնիոնի Սուլթանին կողմէ կը պահուին։ Բայց քիչ յետոյ Թաթարները, որոնք տկարացնել կը ջանային Ռումի Սուլթանութիւնը, զանոնք կ'ազատեն։ Շէմսէտտին Մուհամմէտ, անոնց անդրանիկը, կը տիրանայ իր հօրը իշխանութեան, և 1277ին օգտուելով Եգիպտոսի Պիպարս Սուլթանին դէպ ի Փոքր Ասիա կատարած արշաւանքէն, խաբէութեամբ կը մտնէ և կը տիրէ Իկոնիոնի և կը խորտակէ նաև եգիպտական գունդ մը։ Սակայն Թաթարները՝ թոյլ չեն տար որ անիկա Ռումի Սուլթանութեան մայրաքաղաքին մէջ հաստատուի և իբր գերիշխան պետութիւն զինու զօրութեամբ պաշտպանելու համար կու գան Իկոնիոնի վրայ (Սիսուան, 295)։ Շէմսէտտին Մուհամմէտ կ'ապաստանի իր լեռները և հոն իշխանութիւնը կը շարունակէ։

ԺԳ. դարուն վերջերը Գարամանիոյ տէրն էր Աւատ (Ապուլֆէտա. տես Սիսուան, 294) որ նոյնպէս անհանգիստ կ'ընէ Կիլիկիոյ Հայոց Թագաւորութիւնը։ Լեւոն Գ. (1270–1289 Փետր. 6†) այս պատճառով 1283ին կ'ասպատակէ Գամրաց կողմերը և 1284ին արեւմուտք՝ ծովեզերքի ուղղութեամբ (Սիսուան, 322 և 556), սակայն Եգիպտոսի Մեմլուքներու Սուլթան Գալաուն էլ Մելիք Մանսուրի (1279–1290) պահանջով կը հարկադրուի դարձնել աւարը և գերիները (Սիսուան, 556. Բանասէր, 1903, 72–79)։

Այսպէս Իկոնիոնի Սուլթաններուն տկարութենէն օգուտ քաղելով Գարամանի իշխանները շրջակայ երկիրներէն գրաւումներ կատարեցին և բաւական ընդարձակ պետութիւն մը կազմեցին, երբ Ռումի Սուլթանութիւնը ջնջուեցաւ (1308)։

Գարամանի այն ժամանակի պէյը, Մուհամմէտ Պէտրէտտին, ինչպէս միւս պէյերը, ինքն ալ անկախութիւն հռչակեց, և ճարպիկութիւնը ունեցաւ իր կողմը շահելու գահուն թեկնածուն և տիրանալ Սուլթաններու նախկին մայրաքաղաքին և շրջակայից, որոնք մինչև Արգէոսի ոտքերը կը հասնէին, և թերեւս Կեսարիան ալ իրենց մէջ ունէին։ Սակայն հոն իրենց տիրապետութիւնը — եթէ հաստատուած ալ է— շատ կարճ եղած է, վասնզի Կեսարիա Թաթար տիրապետութեան ենթարկուած է, ինչպէս տեսնուեցաւ։

Մուհամմէտ Պէտրէտտին, որ այս իշխանապետութեան ամէնէն զօրաւոր վեհապետներէն մէկը եղաւ 1318ին բազմաթիւ հեծեալներով ասպատակեց Տարսոնի սահմանները (Սմբատ, 128. Սիսուան, 295)։



Գարաման՝ միշտ ոսոխ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան, կ'երեւայ թէ շարունակ անկանոն պատերազմներով զբաղեցուցած է, որոնց մի քանիին յիշատակը մեզի հասած է։

Այսպէս 1336ին ժամանակակից գրիչ մը կ'ըսէ թէ «Ազգն որ կոչի Խարաման մտեալ էր ընդ երկիրս Կիլիկիոյ եւ բազում վնաս գործեցին ի տեղիս տեղիս» (Սիսուան, 295)։

Ուրիշ գրիչ մը խառնելով ցաւալի յիշատակը Եգիպտացւոց արշաւանքներուն, նոյն տարին կը գրէ (Սիսուան, 295)

«Յոյժ դառնաւունչ ժամանակի,
Եւ ի նուազել Հայոց ազգի,
Անօրէն ազգն Իսմայէլի
Յարեան ի վերայ երկրին Կիլիկէի,
Եւ զամէնն ի սուր մաշեցին սուսերի
Եւ զայլն ի Մսըր վարեցին գերի,
Եւ զկէսն ի յերկիրն Խարամնի։
Եւ Յիսուս Քրիստոս տէրն ամենայնի
Արասցէ գերելոցըն բարի»(1)։

Գարամանի այս ասպատակութիւնները կը կատարուէին Ապու-Սաիտի մահէն (1334) յետոյ Թաթար պետութեան կազմալուծումէն և քայքայումէն (տես վերը, 563) օգտուելով։

Իր զօրութիւնը և ոյժը անխուսափելի կը դարձնէին ճակատագրականօրէն իր պայքարի մտնելը Օսմանի պետութեան հետ, որ Փոքր Ասիոյ մէկ կարեւոր մասը գրաւած էր և իր իշխանութեան ենթարկած էր Սելջուկեան Ռումի Սուլթանութեան քայքայումէն յետոյ կազմուած տասը իշխանութիւններէն մէկ մասը և եկած հասած էր Գարամանի սահմանները։ Որոշ էր թէ օր մը զայն ալ նուաճելու պիտի ձեռնարկէր։

Ուստի Գարաման Օղլու Ալի կամ ըստ M. Ph. le Bas (Asie Minuere, 526) Ալայէտտին պէյ, Օսմանեան Սուլթան Մուրատ Ա.ի (1359–1389) իշխանութեան սկիզբը անոր դէմ ապստամբեցուց Անկիւրիոյ պէյը՝ Ախիլէրը։

Մուրատ Ա. զսպեց ապստամբութիւնը առանց ժամանակ ձգելու որ Ալի պէյ օգնութեան հասնի և ջնջեց Գաղատիոյ պէյութիւնը (1360)։

Ալի այս անգամ ինքն պատերազմի ելաւ և յաղթուեցաւ և հար-

(1) Այս տողերը Ալիշան առած է հաւանօրէն Ներսէս Կրակեցիի 1335ին Երուսաղէմի մէջ գրած Աւետարանէն որ կը գտնուի Վենետիկի Մխիթարեանց մատենադարանը (տես Հ. Բարսեղ վրդ. Սարգիսեան, Մայր Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Բ. հտ. 346)։

Ներսէս Կրակեցի գրեթէ նոյն բառերը ունի ուրիշ յիշատակարանի մը մէջ որ կը գտնուի իր ձեռքովը դարձեալ Երուսաղէմ գրուած ճաշոց գիրքին վերջը, որուն գրչութեան թուականը մէկ տարի կանուխ է, այսինքն 1334ին։

Այս ձեռագիրը կը գտնուի այժմ Երուսաղէմ Ս. Յակոբեանց Մատենադարանը (Թ. 1863)։ Ըստ մեր օրինակութեան, յոյժը պիտի ըլլայ յայս, անօրէնը՝ անաւրէն, իսկ վերջին տողը ունի բառերու տեղափոխութիւն մը, «գերելոցն արասցէ բարի» գրուած ըլլալով։

կադրուեցաւ խաղաղութիւն խնդրել։ Այս առթիւ փեսայացաւ Սուլթանին ամուսնանալով անոր Նէֆիզէ աղջկան հետ։ 25 տարիներու խաղաղութենէն յետոյ Գարամանի իշխանը 1386ին դարձեալ զէնք կ'առնէ Օսմանեան տան պետին և իր աներհօրը՝ Մուրատ Ա. Սուլթանին դէմ։ Գոնիայի դաշտին մէջ երկու բանակները իրարու կը բախին և Գարաման օղլու պարտուած կը քաշուի իր մայրաքաղաքը, ուր կը պաշարէ զայն օսմանեան հրամանատարը Թիմուրթաշ։ Պաշարման տասներկրորդ օրը իր կնոջ միջնորդութեամբ հնազանդութիւն յայտնեց Սուլթանին և կրցաւ փրկել իր պետութիւնը։

Պայազիտ Ա. Եըլտըրըմի (1386–1402) իշխանութեան առեն բոլոր Փոքր Ասիոյ իշխանապետութիւնները գրեթէ ջնջուած էին և աննուաճ կը մնային երկու իշխանութիւններ՝ Գասթէմունի և Գարաման, որոնցմէ վերջինը թէև հպատակած, տակաւին բաւական զօրաւոր էր։ Ան առիթ կը փնտռէր զայն բոլորովին ջնջելու, և այդ առիթը ընծայեցին Գարամանի բնակիչները, որոնք Պայազիտէն խնդրեցին ազատել զիրենք Ալի պէյի հարստահարութիւններէն։ Արագ շարժումով մը, որով հռչակաւոր էր արդէն Պայազիտ, հասաւ Գոնիայի առջև և հոն բանակեցաւ։ Գարամանի իշխանը խոյս տուաւ Տաւրոս լեռներու կողմը և Պայազիտ պաշարեց Գոնիան որուն բնակիչները բացին քաղաքին դուռները և իրեն հնազանդեցան։ Գոնիայի օրինակին հետեւեցան նաև Ագշէհիր, Նիկտէ, Ագսերայ և այլ քաղաքներ (Հ. Գաբրիէլ վրդ. Այվազովսքի, Պատմ. Օսմանեան Պետութեան, 1841, Վենետիկ, Ա. հտ. 51)։

Գարաման Օղլու Ալի Պէյ որպէսզի բոլոր իշխանութիւնը չկորսնցնէ, յանձն առաւ իր երկիրներէն մաս մը զիջիլ Օսմանեան Սուլթանին և կնքել անոր հետ խաղաղութեան դաշինք մը, որով իր իշխանութիւնը կը սահմանափակուէր Տաւրոսի կիրճերուն շուրջը և Չարշամպա գետը սահման կ'ըլլար երկու պետութեանց (Նոյն, 51)։

Սակայն այս խաղաղութիւնը երկար չտեւեց, ինչպէս ըսի։ Հազիւ Պայազիտ Եւրոպա անցած էր երբ Գարաման օղլու Ալի պէյ բոլոր Փոքր Ասիան տակնուվրայ ըրաւ և մինչև Պրուսա առաջացաւ՝ Սուլթանին Թիմուրթաշ զօրավարը գերի բռնելով։

Պայազիտ երբ այս ապստամբութեան լուրը առաւ անմիջապէս անցաւ Վոսփորէն և գնաց ապստամբին դէմ։

Ալի երբ իմացաւ Պայազիտի յանկարծահաս գալուստը, դեսպաններ ղրկեց Պրուսա որպէսզի հաշտութիւն կնքուի և Սուլթանը կրկին ներէ իրեն։ Նոյնպէս արձակեց Թիմուրթաշը՝ որպէսզի ողոքէ Սուլթանը, որ սակայն սաստիկ զայրացած, մերժեց ամէն առաջարկ և դեսպանները ետ դարձուց ըսելով թէ առկէ վերջ միմիայն սուրին է վճիռը։

Կերմիանի նահանգին Աքշէհիրի դաշտին մէջ, Ագչայ գետին եզերքը, երկու բանակները ճակատեցան։ Գարաման օղլու Ալի պէյ իր երկու որդիներով գերի ինկաւ։

Թիմուրթաշ որուն հսկողութեան յանձնուած էին զանոնք կախաղանով պատժեց (տես. Համմէր, Զ. հտ. 308. Asie Mineure, 527 և Այվազովսքի, Պատմ. Օսմ. Ա. 53–54) և Գարամանի իշխանապետութիւնը միացուց Օսմ. կայսրութեան (1392) (Larousse Dicionnaire Universel Encyclopédique, t. II. p. 489), առանց սակայն կարենալու զայն բոլորովին բնաջնջել, վասնզի Ալի պէյի ընտանիքէն անդամներ, անմատոյց լեռներու և անառիկ բերդերու մէջ յամառօրէն կը շարունակէին Գարամանի իշխանութիւնը, որ ունէր տակաւին կատարելիք դեր մը։

Սակայն Կեսարիա կ'անցնէր կրկին Օսմանեան տիրապետութեան։

## Զ.

## ՕՍՄԱՆԵԱՆ Բ. ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## (1393–1402)

Եըլտըրըմ Պայազիտ կը տիրանայ Կեսարիոյ երկրորդ անգամ, սակայն իր տիրապետութիւնը դարձեալ տեւական չ'ըլլար, վասնզի հազիւ 8–9 տարիներ անցած էին, երբ Օսմանեան բանակներու յառաջխաղացութիւնը տեսնող դրացի երկիրներու մէջ տեղաւորուած Թուրքմէն իշխանները՝ նկատելով վերահաս վտանգը, Թիմուր Լէնկը —որ Էօզպէք Թաթարներու գլուխ անցած ահագին տարածութեամբ երկիրներ աշխարհակալած և Հայաստանի ալ տիրած էր— իբր հզօր դրացի, օգնութեան կը կոչեն։

Այսպէս Գարամանի, Կերմիանի, Այտընի, Սարուխանի, Համիտի, Մէնթէշէի և այլ երկիրներու իշխանները, որոնք հպատակած էին Օսմանեան տան և յետոյ իրենց աթոռներէն վանուած, ինչպէս նաև Երզնկայի իշխող Թահէրթէն կամ Թուհուրթէն(1), ապաստանեցան Թիմուրի քով և անկէ օգնութիւն խնդրեցին։


ԹԻՄՈՒՐ ԼԷՆԿ

Թիմուր Լէնկ՝ զօրացած տեղացիներու համակրութեամբ, յարձակեցաւ օսմանեանց վրայ և Անկիւրիոյ վճռական ճակատամարտը (18 Յունիս 1402) շահելով գրեթէ անէացուց այն պետութիւնը որ բոլոր շրջակայ երկիրներու սարսափը եղած էր։

Կեսարիան գրաւուեցաւ Թիմուր Լէնկի զօրքերէն և կողոպուտի և աւարի մատնուեցաւ (Քէմալէտտին, 234)։

Լէնկ Թիմուր՝ ուղղամիտ կերպով կատարեց իր դաշնակիցի յանձնառութիւնները և բոլոր իրեն ապաստանող պէյերը, ինչպէս Այտընի, Մէնթէշէի, Թէքքէի, Կերմիանի իշխանութիւնները, վերստին հաստատեց, ինչպէս նաև Գարամանի իշխան Ալիի որդին 1403ին իր հայրենի երկրին վրայ դրաւ, անոր տալով Իկոնիոնը, Լարանտան, Ագսէրայը, Անթալիան, Ագշէհիրը, Սիվրիհիսարը, Պէկ Պազարը (Այվազովսքի Օսմ. Պատմ. Ա. 74–75)։ Թերեւս Կեսարիան եւս պիտի ըսէինք, եթէ ըսուած չըլլար (Քէմալէտտին, 234), թէ կարճ միջոց մը ան ենթարկուած է Զիւլգատր Օղլուներու։

(1) Այս իշխանին համար Ռուի Գոնզալէս տը Կլավիխօ, որ Սպանիոյ թագաւորէն դեսպան ղրկուած է Լէնկ Թիմուրի մօտ 1403–1406 թուականներուն, կ'ըսէ թէ Հայ էր (տես Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 96)։

## Է.

## ԶԻՒԼԳԱՏՐ ՕՂԼՈՒՆԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

### (1403 — 1405?)

*Զիւլգատր Օղլուները կը պատկանէին, ինչպէս Գարաման Օղլուները, Թիւրքմէն ցեղին և իրենց իշխանութիւնը հաստատած էին Ռուբինեանց կործանումէն յետոյ Մարաշի մէջ 1378ին, ինչպէս Ռամազան Օղլուները՝ Սիսի մէջ։ Այս Թիւրքմէն ցեղին իշխանները երբեմն այնչափ զօրացան և ընդարձակեցին իրենց սահմանները որ Կիլիկիոյ ամբողջ արեւելեան մասը իրենց իշխանութեան տակ առին։ Աբուլ Աբբաս Գուրհանէտտինի որդին Զէյն-էլ-Ապէտին մերժուած իր հպատակներէն՝ ղրկուած էր իր աներհօրը Զիւլգատր Օղլու տոհմին պետ Նասրէտտին իշխանին քով։ Թիմուր Լէնկ հաւանօրէն միւս իշխաններուն հետ վերահաստատած է նաև Զէյն-էլ-Ապէտինը որ Զիւլգատըրեանց օգնութեամբ տիրապետած է իր հօրը երկիրներուն, սակայն ինչպէս կ'երեւայ, եթէ եղած է այս տեսակ բան մը, շատ կարճ տեւած է, և Գարամանի պէյը իբր իր սեփականութիւնը գրաւած է Կեսարիան։*

## Ը.

## ԳԱՐԱՄԱՆԵԱՆՑ Բ. ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

### (1405? — 1431)

*Գարամանեանց վերահաստատուած իշխանութիւնը օգտուելով Օսմանեան տէրութեան քայքայումէն և Պայազիտ Եըլտըրըմի չորս զաւակներուն երկրին զանազան մասերուն մէջ թագաւորելով տասն և մէկ տարի* (1402–1413) *իրարու հետ մաքառելէն և երկիրը տկարացնելէն, կը վերակազմէ իր ոյժերը։ Այս պետութիւնը վերահաստատող իշխանին անունը շատ որոշ չէ։ Այվազովսքի* (Ուս. Պատմ. Ա. *էջ* 74) *զայն կը կոչէ* «որդի իշխանին Գարամանայ» *,և Գր. Մարգարեան՝* (Ուս. Պատմ. *էջ* 24) *ծիւնէյտ, սակայն զայն երբեմն Այտընի և երբեմն Գարամանի իշխան կը ճանչնայ։*

*Գարամանի իշխանը՝ Օսմանեան պետութիւնը պառակտող երկարատև խռովութիւններուն կը բերէ իր մասնակցութիւնը և Չէլէպի Սուլթան Մէհէմմէտ Ա.ի* (1413–1421) *միահեծան իշխանութեան հաստատութենէն յետոյ մշտատև խռովութեան ու շարունակական պայքարի բոյն մը կը դառնայ ինչպէս Օսմանեանց նոյնպէս նաև շրջակայ երկիրներուն, ինչպէս Կիլիկիոյ տիրող՝ Ռամազանեանց համար։*

*Քանի քանի անգամներ Գարամանի իշխանները կը նուաճուին և երդումներով հաւատարմութիւն խոստանալէ, և իրենց իշխանութեան մէջ հաստատուելէ յետոյ, կը դրժեն իրենց խօսքը և դարձեալ կ'ապըստամբին, այնպէս որ Թրքական ժողովրդական իմաստութիւնը կը ստեղծէ նկարագեղ բացատրութիւնը՝* «Գարամանըն գոյունու սօնրա չըգար օյունու»:



*Սակայն առանց իմ տեսութեանս շրջանակէն դուրս կը մնան հակառակ իրենց խիստ հետաքրքրական դրուագներուն։*

*Գարամանի իշխանները 1405էն մինչև 1431 տէր կը մնան Կեսարիոյ, և կը նորոգեն քաղաքին քայքայուած պարիսպները։*

*Գարամանեանց տունը՝ Սելջուկներէն յետոյ, քաղաքը ամէնէն աւելի կարեւոր շինութիւններով զարդարողն եղած է։ Գարաման Օղլուները հակառակ Սուլթան Մուրատ Բ.ի կողմէ ընկճուած ըլլալուն (1423) կը պահէին տակաւին իրենց անկախութիւնը Օսմանեան գերիշխանութեան տակ և շրջակայ երկիրներու վրայ յարձակումներ ընելով կ'ընդարձակէին իրենց իշխանութիւնը, օգտուելով Փոքր Ասիան յուզող շփոթութիւններէ որոնց գլխաւոր դերակատարներն էին Գարա-Գոյունլուներու և Աք-Գոյունլուներու իշխանութիւնները, որոնց առաջինին գլուխը կը գտնուէր այդ պահուն Գարա Եուսուֆ Քուրտին որդին՝ Իսկէնտէր* (1421–1437) *որ ինքզինքն հռչակելով Հայաստանի թագաւոր (=Շահի Արմէն) կը յաւակնէր պետը ըլլալ բոլոր Արեւելքի իսլամ պետութեանց և անողոք պայքար կը մղէր Լէնկ Թիմուրի որդւոյն Շահրուխի* (1405–1451) *դէմ։*



ԽԱԹՈՒՆԻՑԷ ԿԱՄ ՇԱՄԻԼԷՐ ՄԷՏՐԷՍԷՆ

(1431ին կառուցուած Զուլգատր Օղլու Նասրէտտին Մէհմէտ պէյի Խալիլէ, անկեալ արուեստով, որ բոլորովին հեռու է Սելջուկեանց շրջանի ճոխութենէն):

*Իսկ Աք-Գոյունլուներու պետն էր Օթման կամ Օսման, որուն իշխանութիւնը պահ մը վտանգուեցաւ, վասնզի Իսկէնտէր նշանաւոր հերոսը սպանեց զինքը Կարինի մէջ 1435ին* (Ազգապատում, 2016) *և հալածուած Շահրուխէն և նոյնիսկ իրեններէն առաջացաւ մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը Աքշէհիր և Թօգատ* (Նոյն) *և 1436ին քարուքանդ ըրաւ Սեբաստիան և շրջակայքը։ Ծիւդ այս խառնաշփոթութեանց ընթացքին Սուրիայէն Զիւլգատր Օղլուները Տաւրոսը անցնելով կը մտնեն Կապադովկիա և անոր մէկ կարեւոր մասը կը գրաւեն* (1431)։

## Թ.

## ԶԻՒԼԳԱՏՐ ՕՂԼՈՒՆԵՐՈՒ Բ. ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

### (1431 — 1437)

*Կեսարիա 1431ին գրաւուած է վերստին Զիւլգատր Օղլուներէն ասոնց իշխանութեան տակ մնացած է նաև շրջան մը։* Բնաշխարհիկ Բառարան *այս տիրապետութեան շրջանը կը դնէ միայն երկու տարի*

(1435–1437) և տիրողները Շամիճեր անունով կը ճանչնայ, սակայն այդ Դամասկոսցիները, Շամի և Հալէպի տէր Ջիւլգատր Օղլուներն են, որոնք նոյնիսկ այն Թուականներուն կառուցած են Կեսարիոյ մէջ յիշատակարաններ։ Այսպէս 1431ին (Հիճրէթի 835)(1) կառուցուած է Ջիւլգատր Օղլու Նասրէտտին Մէհմէտ պինի Խալիլի կողմէ Խաթունիյէ կամ Շամիլէր մէտրէսէ կոչուած շէնքը։

## Ժ.

## ԳԱՐԱՄԱՆԵԱՆՑ Գ. ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## (1437 - 1471)

Գարամանի իշխանները Կեսարիոյ տիրելէ յետոյ կը ջանան նոր հողային գրաւումներ ընել, օգտուելով մերձաւոր Ասիոյ շփոթ կացութենէն։

Սուլթան Մուրատ Բ. 1437ին կը գրաւէ Պէյշէհիր, Ագշէհիր և Գոնիա քաղաքները, սակայն կրկին կը զիջի հաշտութիւն կնքելու և այս քաղաքները Գարամանի պէյին դարձնելու (Այվազովսքի, Օսմ. Պատմ. Ա. 130-131), սակայն ան Սուլթանին Եւրոպայի մէջ զբաղած ըլլալէն օգուտ քաղելով դարձեալ կ'ասպատակէ Քէօթահիա, Էնկիւրի, Պոզովատին, Սիվրիհիսար, Ագհիսար, Ագշէհիր և Պէկշէհիր (1444)։

Սուլթան Մուրատ կու գայ Ասիա և ոտնակոխ կ'ընէ Իկոնիոնը և Լարանտան և ամբողջ Գարամանի աշխարհը կը նուաճէ, սակայն ստիպուած Եւրոպա դառնալ աճապարելու, կրկին բաւական նպաստաւոր պայմաններով խաղաղութիւն կը կնքէ։

Գարամանի իշխանը Փիր Իպրահիմ սակայն այս տան յատկանիշը եղող անհանդարտ նկարագրով դարձեալ իր պետութիւնը ընդարձակելու փորձեր կ'ընէ նուաճելով ծովեզերեայ բերդեր, ի մէջ այլոց Կիպրոսի Թագաւորին սեփական Կոռիկոսի բերդը (1448) և այլ երկիրներ և կը կազմէ բաւական ընդարձակ պետութիւն մը, որուն իշխանութեան տակ էր Կապադովկիան, Փոքր Հայքը, և կը տարածուէր դէպի Բարձր Հայք և Պոնտոս (Ազգապատում, 2137) և կը ձգտէր նաև տիրել Կէրմիանի, Այտընի և Մէնթէշէի (Այվազովսքի, Օսմ. Պատմ. Ա. 148) և այսպէս իւրացնել Ռումի Սելջուկեանց բոլոր երկիրները և Թուրք մեծ պետութիւն մը կազմել, նոյնիսկ ընկճելով Օսմ. տունը։

Այս ձգտումը անշուշտ հաշտ աչքով չէր կրնար դիտուիլ Օսմանեան տունէն, որուն գահը երբ բարձրացաւ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. (5 Փետր. 1451), Գարամանի էմիրը շարունակեց իր ըմբոստ դիրքը։

Սուլթանը ստիպուեցաւ նուաճելու ձեռնարկել Գարամանի այս յաւակնոտ իշխանը (1452)։ Սակայն հազիւ թէ Սուլթանը ճամբայ ելած էր դէպի Գարամանի երկիրները, ան առաջարկեց իր աղջիկը կնութեան տալ Սուլթանին և հաշտութիւն կնքել, ինչ որ Օսմանեան Սուլթանը ընդունեց վասնզի անիկա ծրագրած էր Կ. Պոլսոյ գրաւումը, որ ժամ առաջ կ'ուզէր գլուխ հանել։ Ուստի Գարամանի ըմբոստ իշխանին հետ մաքառելու գործը յետաձգելով Կ. Պոլսոյ վրայ գնաց և գրաւեց (1453 Մայիս 29) Արեւելքի մէջ քրիստոնեայ քաղաքակրթութեան այս վերջին ամրոցը՝ որ իբր հազար տարի պաշտպանած էր քաղաքակրթութիւնը բարբարոսութեան դէմ։

(1) Քէմալէտտին, էջ 79 և 45, 835 հիճրէթի թուականը 1418ին համապատասխան գրած է, ինչ որ սխալ մըն է։



Սուլթան Մէհէմմէտ իր յաջողութենէն յետոյ առիթի սպասեց նուաճելու համար նաև Գարամանի պետութիւնը։ Այդ առիթը շուտով ներկայացաւ վասնզի այս միջոցներուն մեռաւ Գարամանի իշխանը Իպրահիմ պէյ, տէրութիւնը ձգելով իր եօթը որդիներէն կրտսերագոյնին՝ Իսհագի։

Այս պատճառով մեծ խռովութիւն ծագեցաւ անոնց մէջ և երիցագոյնները խնդրեցին օգնութիւնը՝ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտին և Իսհագ՝ անոր հակառակորդին՝ Ուզուն Հասանին՝ Ասիոյ ամէնէն հզօր վեհապետին։

Սուլթան Մէհէմմէտ իր բոլոր ընտիր զօրքովը կ'երթայ Գարաման և կը գրաւէ Իկոնիոնը, իսկ Լարանտայի (=Գարաման) վրայ կը ղրկէ Մահմուտ փաշան։

Հոն տեղի կ'ունենայ մեծ ճակատամարտ մը և Իսհագ քաղաքէն ելլելով մազապուր կը փախչի Տաւրոսէն անդին և Ֆաթիհ կը գրաւէ Գարամանի իշխանութեան երկիրները և զանոնք կը կցէ Օսմանեան պետութեան և վերջ կու տայ Գարամանեանց իշխանութեան (1466) (տես Այվազովսքի, Պատմ. Օսմ. Ա. հտ. 204-205)։

Գարամանեանց իշխանութեան վախճանին(1) մասին տրուած այս տեղեկութեանց հակառակ ուրիշ պատմագիրներ, Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտի Գարամանի իշխանութեան հետ ունեցած յարաբերութիւնները կը ներկայացնեն այսպէս։

Ըստ այդ պատմագիրներու յաղթական Սուլթանը՝ Գարամանի անընկճելի զօրութիւնը խորտակելու համար դիմած է նենգութեան, Կ. Պոլսոյ գրաւումէն յետոյ յաջողելով իր կողմը շահիլ՝ Փիր Իպրահիմի եղբայրը՝ Փիր Ահմէտը՝ անոր խոստանալով Գարամանի իշխանութիւնը։

Փիր Ահմէտ՝ Օսմանեան Սուլթանին օգնութեամբ կը հալածէ իր եղբայրը և ինքն կը տիրէր Գարամանի իշխանութեան մօտաւորապէս երկու տարի (1467–1469)։ Սակայն իր մէկ անխոհեմութիւնը պատճառ կ'ըլլայ որ Ֆաթիհ անոր հետ գժտուի։

Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. Կ. Պոլսոյ գրաւումէն յետոյ նոյնիսկ Օդրանթը գրաւելով և Իզոնձօն անցնելով հիւսիսային Իտալիա մտնել կը փորձէ և ահարկու սպառնալիք կը դառնայ Եւրոպայի, և ամէնէն առաջ Վենետիկի Հասարակապետութեան, որուն վարիչները շատ կ'աշխատին ամբողջ Եւրոպան ոտք հանել Թուրքերուն դէմ և չեն յաջողիր։ Ասոր համար իրենց ուշադրութիւնը Արեւելք կը դարձնեն հոն ճարելու համար իրենց դաշնակիցներ։ Հետեւաբար սիրով ընդառաջ կ'երթան Պարսկաստանի վեհապետին Ուզուն Հասանի կողմէ

(1) Քիչ յետոյ պիտի տեսնուի թէ նոյնիսկ Այվազովսքի ինքն ալ կը հաստատէ թէ նուաճումը վերջնական չէր, վասնզի Օսմանեանք բաւական ժամանակ կը զբաղին դեռ Գարամանի տան բեկորներուն հետ։

եղած զինակցութեան առաջարկին և 1471ին Քաթերինօ Զենօն (Caterino Zeno) դեսպան կը ղրկեն։

Գարամանի էմիրը Փիր Ահմէտ, որ համակիր ըլլալ կը թուէր այս գաղափարին, ճամբայ կու տայ Վենետիկի դեսպանին և այս պատճառով Ֆաթիհ անակնկալ կերպով կը յարձակի անոր երկիրները (հմմտ. Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 124–163)։

Փիր Ահմէտ, անկարող դիմադրելու, բազմաթիւ բերդեր պահակազօրքով և ռազմամթերքով ամրացնելէ յետոյ, խոյս կու տայ Ուզուն Հասանի քով, որ կը խոստանայ զինքն վերահաստատել, պայմանով որ այն բերդերը հաւատարիմ մնային իրեն (Նոյն) ինչ որ չեղան, վասնզի անոնց հրամանատարները կաշառուած մէկիկ մէկիկ յանձնեցին զանոնք Թուրքերուն։

1471ին մէկ կողմէն Սուլթանը կռուելով Պարսիկ բանակներուն դէմ, որոնք մինչև Գոնիա առաջացեր և Կեսարիան ալ գրաւեր էին, Գարամանի կուսակալ կը կարգէ Կէտիկ Ահմէտ փաշան, որպէսզի Գարամանի իշխանութեան վերջին բեկորները նուաճէ, գրաւելով Ալայան ուր կ'իշխէր Սելջուկեանց Իկոնիոնի Սուլթաններու սերունդէն Գըլըճ Ասլանը (Այվազովսքի, Նոյն, Ա. 209 և Սիսուան, 316), ինչպէս նաև Կեսարիան (տես Բնաշխարհիկ Բառարան) որ վերջնապէս կը կցուի Օսմանեան կայսրութեան։

Գարամանեանց փորձերը վերակազմելու համար իրենց պետութիւնը ոչ մէկ յաջողութիւն կը գտնէ։

## ԺԵ.

# ՀԱՅԵՐՈՒ ԿԵԱՆՔԸ ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՄԷՋ ԺԴ. ԵՒ ԺԵ. ԴԱՐԵՐՈՒՆ

**( 1301 — 1471 )**

Ինչպէս տեսնուեցաւ Կեսարիա իր շրջականներով ԺԴ. դարու սկիզբէն մինչև ԺԵ. դարուն վերջերը ենթարկուած էր զանազան իշխանութեանց, որոնք նկարագրով բաւական իրարու կը նմանէին, իբր ոչ կարգաւորեալ և կազմաւորեալ իշխանութիւններ, և իրարու դէմ կը մաքառէին երկրին տիրապետութեան համար։

Ասոնցմէ ամէնէն երկարատև իշխանութիւն ունեցողը եղաւ Գարամանի պէյութիւնը (1393, 1405–1431 և 1437–1471) որուն կառավարութիւնը սակայն խռովայոյզ վիճակ մը ունեցած է, գրեթէ մըշտատև պատերազմներով, այնպէս որ այս երկու դարերու մօտ ժամանակամիջոցին խաղաղութիւն չէ վայելած երկիրը և հետևաբար զրկուած անոր բարիքներէն։



Այս իրողութիւնը բաւական է մեզի համոզելու թէ Կեսարիա և շրջակայքն ապրող քրիստոնեաները և մասնաւորապէս Հայերը հանգիստ վիճակ մը չեն ունեցած, և խանգարուած է ամէնէն առաջ իրենց տնտեսական բարօրութիւնը, քանի որ անկարելի էր որ պատերազմները և անոր յարակից յուզումները չվնասէին առևտուրին, երկրագործութեան և արհեստներու։ Հետևաբար Հայերը չունեցան Սելջուկեանց շրջանի փայլուն վիճակը, թէև պէտք է ըսել թէ այս երկու ձախող դարերու ժամանակամիջոցին ալ անոնք պահեցին իրենց թիւը, վասնզի մօտակայ ապահով և բարգաւաճ շրջանակ մը գոյութիւն չունէր որպէսզի հոն կարենային ապաստանիլ և տեղաւորուիլ։ Անոնք իրենց գոյութիւնը քաշքշեցին այս երկրին մէջ, ուր մնաց նաև իրենց եկեղեցական վարչութիւնը պահպանուած, իր առաջնորդներով, որոնց գոյութիւնը կը հաստատուի վաւերագիրներով։

Եպիսկոպոսական աթոռին պահպանութիւնը մասամբ փաստ մըն է որ Հայերը կը վայելէին կրօնի ազատութիւն, այնքան որքան որ կարելի էր ակնկալել իսլամ երկիրներու մէջ կամ որքան որ տիրողներու հայեցողութիւնը — որ միշտ միօրինակ չէ եղած — թոյլ կու տար։

Արդարև այս շրջանէն որոշ տուեալներ չունինք հալածանքներու, որոնք կատարուած ըլլան իսլամութեան անունով, բայց Գատը Ղազի Պիւրանէտտինի շրջանէն, որուն մոլեռանդութիւնը կը յիշատակուի յատկապէս իբր եկեղեցիներու և վանքերու կողոպտիչ (Չամիչ. Գ. հատ. 432)։

Նոյնպէս ամբողջ շրջանին մէջ՝ միայն այս մոլեռանդ իշխողին տիրակալութեան տակ է որ կը պատահի Սեբաստիոյ Ստեփանոս եպիսկոպոսին և Սեղբեստրոս և Թորոս աբեղաներուն նահատակութիւնը 1387 Յունիս 23ին(1), և Զորոյ վանքին առաջնորդ Միքայէլ վարդապետին գլխատումը։

Նշանակելի է միայն թէ Պիւրանէտտին որուն համար կ'ըսուի թէ «Չարամիտ եւ յանդուգն» մարդ մըն էր և ատելի եղած էր ամէնուն իր «խստասրտութեան եւ ամբարտաւանութեան» համար, չափազանց կը կասկածէր դաւաճանութենէ մը, նոյնիսկ Թուրքերու կողմէն։ Չի գիտցուիր ինչպէս Ստեփանոս եպ. ալ կ'ամբաստանուի և կը ձերբակալուի Ս. Նշան վանքի երկու գլխաւոր միաբաններուն հետ։ Ուստի իրենց ձերբակալութեան շարժառիթը քաղաքական էր։ Յետոյ ուրացութեան հրաւիրուեցան ազատութեան արժանանալու համար, ինչ որ եպիսկոպոսը և երկու ընկերները մերժեցին և այս պատճառով նահատակուեցան (Հայոց նոր վկաներ, 137–150 Ազգապատում, 1975–1977 Դիւան Հայոց Պատմութեան, Ժ. հատ. 61, 69 և 494. Տաշեան, Մայր ցուցակ, 89)։

Պիւրանէտտինէն զատ, այս շրջանին չենք հանդիպիր Կեսարիոյ տիրող ոևէ իշխանի մը մոլեռանդական արարքին յիշատակութեան, թէև մասնաւոր բարեացակամութիւն մըն ալ դունուրեք արձանագրուած ըլլայ։ Ամէնէն երկարատև իշխանութիւն ունեցող Գարամանօղլուները որոնց ծագումը օտար հեղինակ մը՝ Համմէր, թէև հայկա-

(1) Գրիգոր դպիր Վարագեցի (Դիւան Հայոց Պատմ. Ժ. հատ. 61) 1384 թուականին կը դնէ Ստեփանոս եպ.ի նահատակութիւնը և Ս. Քառասնից վանքին կործանումը, որ կատարած է Պիւրանէտտին։

կան կը կարծէ սակայն իբր խլամ իշխանութիւն մը Հայոց համար մասնաւոր բարեացակամութիւն մը ունեցած ըլլալ չեն թուիր կամ փաստեր չունինք այս մասին։

Գարամանեանք որոնք աւելի պատերազմիկներ էին և կռուողներ, կը միտինք կարծել թէ, կրօնական հարց չեն ունեցած և հետեւաբար այս շրջանին Կեսարիոյ Հայերը իրենց քրիստոնէական կրօնքին համար հալածանքի չեն ենթարկուած և երկրին իշխողները աւելի կամ պակաս մեղմութեամբ վարուած են, իրենց անձնական խառնուածքին և տրամադրութեան համաձայն։

Ասիկա բոլոր ժամանակաշրջանին, և լայն առումով բոլոր Արեւելքին, այն օրերու ընդհանուր պատկերն էր, վասնզի այս խառնակ վիճակին մէջ որ ան ունէր, և զանազան մեծ ու փոքր և աւելի կամ նուազ տեւական իշխանութիւններու մէջ, որոնք կազմուած էին այդ շրջաններուն մէջ, չի կար միօրինակութիւն և ամէն իշխող ունէր իր սեփական հայեացքը և ուղղութիւնը։

Մասնաւորապէս Ապու Սայիտի կամ Պուսայիտի մահէն (1334) յետոյ երբ Թաթար մեծ պետութիւնը քայքայուեցաւ և բազմաթիւ մանր պետութիւններ կազմուեցան, ասոնցմէ ամէն մէկը ունէր իր սեփական վարուելու կերպը որ համապատասխան չէր նոյնիսկ իր դրացի իշխանութեան ուղղութեան և կերպին։

Թաթարները՝ մասնաւորապէս շատ աններդաշնակ և փոփոխական վարուելու եղանակ մը ունեցած են։ Ամէնէ սոսկալի անգթութիւնները և հալածանքները կատարած են և երբեմն ալ չափազանց մեղմութիւն ու սէր ցոյց տուած։

Կեսարիոյ շրջանակին մէջ ալ իրենց ընթացքը տարբեր չեղաւ։

Անոնք Սելճուկեան շրջանէն սկսեալ երբ Կեսարիա մտան, ամէնէն սոսկալի խժդժութիւնները գործեցին և պակաս չթողուցին այն չարիքները որոնք նկարագրուած են ժամանակակից Հայ պատմագիրներէն և մանաւանդ ձեռագրաց գրիչներէն՝ որոնք յաճախ իրենց ականատեսի տպաւորութիւնները յիշատակած են այնքան անկեղծ ու կենդանի գոյներով։ Բայց այդ Թաթար, Թուրք, Թիւրքմէն և Քիւրտ իշխաններու շարքին մէջ որոնք այդ դարուն հայարնակ վայրերու կ'իշխէին, գտնուած են նաև իշխողներ, ինչպէս Դարա Օսման կամ Օթման, Աք-Գոյունլուներու պետը, զոր Թովմա Մեծոփեցի (72) «յոյժ սիրող ազգիս Հայոց» կը ներկայացնէ, և անոր ժամանակը «եղեւ կ'ըսէ խաղաղութիւն խնամօքն Աստուծոյ ամենայն աշխարհիս ... եւ շինութիւն ... մարդիկ ի յաւեր ոչ բնակէին այլ ի շէնս ... եւ թէեւ հարկապահանջութիւն բազում էր սակայն խաղաղութիւն առանց խռովութեան էր: Եւ ծաղկեալ էին եկեղեցիք քահանայիւք եւ սարկաւագօք եւ մարդիկ որք յաւուրս Զաղաթային ի հաւատոյ ուրացեալք էին, եկին ի հաւատս» (Նոյն, 73)։

Նոյնիսկ քրիստոնէութեան յարող Թաթար վեհապետներու յիշատակութիւնը ինքնին ցոյց կու տայ թէ Թաթարական տիրապետութեան ենթարկուած երկիրներու մէջ անոնք որոշ ուղղութիւն մը չեն ունեցած։ Իսկ Գարամանեանք և Թուրքերը, ինչպէս ըսինք կրօնական հալածանքով զբաղելու ժամանակ չեն ունեցած։

Հետեւաբար կրնանք վստահօրէն ըսել թէ եթէ կրօնական հալածանքներ կատարուած են Կեսարիոյ և շրջակայից մէջ, անոնք տեւական և միօրինակ հանգամանք չունէին այլ անցողակի։ Ըստ այս



տեսակէտով մեծ վրդովումի և անհանգստութեան չեն մատնուած Հայերը։

Ցաւուկ ուշադրութեան առնել կ'արժէ այս իրողութիւնը, վասնզի գլխաւոր պատճառներէն մէկը Հայոց տեղափոխութիւններուն, եղած են կրօնական հալածանքները, որոնք այս շրջանին չէին կրնար շարժառիթ ըլլալ գաղթականութեան, քանի որ շրջակայ երկիրներն ալ կը գտնուէին գրեթէ համանման պայմաններու մէջ։

Նոյնիսկ պիտի ըսեմ որ Կեսարիա՝ 1300էն 1471, ունեցած է պարբերաբար լաւագոյն ժամանակամիջոցներ որոնք բաղձալի դարձուցած են այդ երկիրը, ինչպէս Թաթար Արթինա պէյի իշխանութեան ժամանակամիջոցը, որ կը զուգադիպի ճիշդ այն շրջանին ուր Ապու Սայիտ կը մեռնի (1334) և Թաթարներու տիրապետած երկիրները կը մատնուին անիշխանութեան։

Սոֆիայի Պուլկար Ազգ. Մատենադարանը պահուած մագաղաթեայ ձեռագիր Հայերէն Աւետարան մը որ 1346ին նորոգուած է Բաբերդ (=Պայպուրտ) ունի խիստ շահեկան յիշատակարան մը(1) որ կը ներկայացնէ Հայաստանի և Կեսարիոյ մէջ տիրող իրարու հակառակ պատկերները։

«Ի նեղ եւ դառն ժամանակիս յորում մեծ մայրաքաղաքն Թէոդուպօլիս անապատ եղեւ ի մարդոյ եւ յանասնոյ ի յազգէն հագարու եւ իսմայէլացոցն. նաեւ արեւելեանքն ամենայն տունն Վրաց, որ յոլովք ի սուր սուսերի մաշեցան եւ այլք ի սովոյ մեռանէին, որ ոչ ոք կարէ պատմել զանցս աղետիցս զոր եկն ի վերայ ազգիս Քրիստոնէից եւ այն վասն առաւել յանախ մեղաց մերոց: Որ բազում տանուտեարք եւ քահանայք մուրացիք տառապեալք շրջէին ի նայրենի գաւառաց ...: Երեմեայ պիտէր որ լայր զանլմրռնելի վիշտս Քրիստոնէից: Եւս առաւել ազգիս Հայոց»:

Ասիկա պատկերին մէկ կողմն է և կը ներկայացնէ Հայաստանի վիճակը այդ օրերուն, երբ «եղեւ վերջին նորոգումն Յուրբ Աւետարանիս ի թուականութեանս Հայոց ՉՂԵ (795+551=1346): Ի գաւառիս Խաղտեաց ի յանառիկ ղղեակս որ կոչի Բաբերդ ... ի Հայոց վերադիտողութեան Տեառն Մխիթարիս(2) եւ ի հայրապետութեան այսմ գաւառիս տէր Սահակայ եւ տէր Ստեփաննոսի եւ ի թագաւորութեան Հայոց Կոստանդի(3) եւ յիշխանութեան աշխարհին Հոռմայ Ցորաթնային որ էր այր բարեպաշտ զի յոլովք ի յաշխարհի նորա լնուին հազիւ զովեալ անձինս զոր տէր Աստուած յերկար առնէ զպետութիւն նորա ամէն»:

Ո՞վ է այս այր բարեպաշտ Ցորաթնան(4) որ ունի Հոռոմներու աշխարհին իշխանութիւնը։

Եթէ Յիշատակարանին գրիչը «Հոռոմներու աշխարհ» բացատրութեամբ՝ գրեթէ Կ. Պոլսոյ անձուկ պատերուն մէջ սահմանափակուած Բիւզանդական կայսրութիւնը կը հասկնար, այս ժամանակ հոն կ'իշ-

(1) Ամբողջութիւնը հրատարակուած Յ. Քիւրտեանէ. տես ՀԱ. 1926, էջ 344–345։

(2) Մխիթար Գռնեցի որ պաշտօնավարած է 1341էն 1355։

(3) Կոստանդին Թագաւոր (1345–1365)։

(4) Վերը (էջ 563) տեսանք թէ Սամուէլ Անեցիի շարայարողը (168) զայն կը ճանչնար «Ցարաթնան» անունով։

խէին երկու համանուն կայսրեր, Յովհաննէս Ե. Պալէոլոգ (1341–1376), և Յովհաննէս Զ. Կանդակուզէն (1341–1355), և ոչ թէ «Յորաթնայ» որ ոեւէ կապ չունի Յովհաննէսներուն հետ ո՛չ իբր պզտիկ անուն և ո՛չ ալ իբր մականուն։

Յետոյ դիտելի է որ Թագաւոր բառը չէ գործածուած մինչ Բիւզանդական կայսրերը առհասարակ Հայերը Թագաւոր տիտղոսով կը յիշէին իբր համապատասխան յունական վասիլէֆս բառին զոր Յոյնք անբաժան կը գործածէին իրենց կայսրերու անուններուն։

Հոռոմներու աշխարհ կամ Ռումի պետութիւն ճանչցուած էր Սելջուկի Ռումի կայսրութիւնը որուն մայրաքաղաքն էր Իկոնիոն (=Գոնիա) որ սակայն 1346ին գոյութիւն չունէր, առ առաւելն 1315ին՝ եթէ ոչ աւելի առաջ, այդ իշխանութիւնը ջնջուած ըլլալով։

Սակայն տրուած ըլլալով թէ Հայերը «Յունաստան» կամ «Հոռոմաց աշխարհ» անունով կը ճանչնային միշտ Փոքր Ասիոյ թերակղզին, վստահօրէն կրնանք ըսել թէ «բարեպաշտ» Յորաթնայի իշխանութիւնը պէտք էր այս շրջանակին մէջ փնտռել։

Արդ, 1346ին Օսմանեանց տան կ'իշխէր Օրխան (1326–1359), Գարամանեանց տան՝ Մուհամմէտ Պէտրէտտին կամ Դարաման օղլու Ալի (ըստ ոմանց Ալայէտտին), իսկ Կեսարիոյ մէջ Թաթար Արթինա պէյ (1341էն սկսեալ), որ է իսկապէս Յիշատակարանին ակնարկած «այր բարեպաշտ» Յորաքեան ինչպէս նաև Սամուէլի պատմագրութեան մէջ յիշատակուած Յարաքեան և արտաքին պատմիչներու Արթիեան:

Այս պարագային կ'արժէ մասնաւոր կերպով դիտել տալ թէ Արթինան որուն երկիրը կը դիմէին սովահար Հայեր, կրցած էր իր իշխանութիւնը ընծայել ցանկալի, և ստեղծել իրեն համար բարի համբաւ մը որ հեռու Հայաստանի մէջ ապրող Հայոց մէջ արձագանգ գտած էր և Կարնոյ աղէտին ու թշուառութեան ականատես քրիստոնեայ գրիչը և կազմողը (Յովհաննէս Նաղաշ), Բաբերդի մէջ, անոր իշխանութեան շրջանակէն այնքան հեռու տեղ մը, պարտք կը համարէր անոր գովեստը հիւսելու և մաղթելու որ «Աստուած յերկար առնէ զպետութիւն նորա»:

Ալ աւելի նշանակելի է սա իրողութիւնը որ նոյն գրիչը այս տեսակ մաղթանք մը չ'ըներ նոյնիսկ ժամանակակից Հայոց թագաւորին և կաթողիկոսին համար որոնց յիշատակութիւնը նաև կ'ընէ իր յիշատակարանին մէջ, ինչպէս տեսնուեցաւ։

Ուրեմն Արթինա կը ներկայանար բացառիկ դէմք մը, որուն իշխանութեան շրջանը պէտք է նկատել Կեսարիոյ կեանքին բարեբախտ շրջաններէն մին, որ իրեն կը քաշէ ուրիշ տեղերէ տառապեալներ և հալածեալներ, որոնք շատ դժբախտաբար այս ժամանակամիջոցին այնքան առատ էին, քանի որ Հայաստան մատնուած էր Թաթարական արշաւանքներու թոհուբոհին և Կիլիկեան Հայ թագաւորութիւնը նշաւակ եղած էր Գարամանեանց, Թաթարաց և Եգիպտացի Մեմլուքներու մշտատև յարձակումներուն և իր օրհասի շրջանին մէջ էր, և գունդագունդ գաղթականներ թէ՛ Մեծ Հայաստանէն և թէ՛ Կիլիկիայէն կը մեկնէին աշխարհի զանազան կողմերը։

Ասոնցմէ ոմանք ապահովաբար պէտք է անցած ըլլան Տաւրոսի միւս կողմը և հաստատուած՝ Արգէոսի շուրջը, մանաւանդ Արթինայի իշխանութեան շրջանին, սակայն ամէն պարագայի մէջ ոչ մեծ թիւով



վասնզի իսլամ երկիրները շատ չէին հրապուրեր Հայերը։

Անուրանալի իրողութիւն է որ հակառակ ասոր Մահմետական
երկիրներ — մասնաւորապէս Օսմանեան հողեր — գաղթած են բաւա-
կան թուով Կիլիկեցի Հայեր, վասնզի Օսմանի տունն ալ աւանդաբար
շարունակած է Սելջուկեանց Ռումի կայսրութեան խորագէտ ու հե-
ռատես հիմնադիրին, Սիւլէյման Իբն Գուլթումիշի ընդգրկած ուղղու-
թիւնը և վարուողութիւնը հանդէպ հպատակ քրիստոնէից, մինչև
որոշ շրջան մը։

Այնպէս որ եթէ ոչ Գարամանեանց գէթ Արթինայի և իր որդւոց իշխանութեան շրջանին նոր գաղթականներ պէտք է հաստատուած ըլլան Կապադովկիոյ մէջ, վասնզի սոսկալի դրութիւն մը ստեղծուած էր Հայաստանի մէջ, ուր Թաթարական տիրապետութեան սկիզբէն՝ անհանդուրժելի եղած էր կացութիւնը և որ շատ աւելի վատթարացաւ անոր կազմալուծումէն յետոյ, երբ Թիւրքմէն Գարա Եուսուֆ և իր որդին Իսկէնտէր, ինչպէս նաև Օթման և այլ մանր իշխանութիւններուն խաները և Պէկերը շարունակ իրարու հետ կռուելով մշտնջենական արհաւիրքի և շփոթի մէջ պահեցին երկիրը։

Երբ այսքան խառնակ էր Մեծ Հայաստանի վիճակը և անբաղձալի, նուազ տագնապալի չէր Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան երկիրներուն մէջ ապրող Հայոց կեանքը։

Թաթարներու զինակցութիւնը՝ Ռուբինեանց Թագաւորներու հետ՝ ժամանակի մը համար ապահոված էր Կիլիկեան իշխանութեան գոյութիւնը և զայն պաշտպանած Մեմլուքներու և ուրիշ իշխանութեանց դէմ։

Սակայն ԺԴ. դարուն Թաթարները իսլամական կրօնքը ընդունելով, Հայոց թշնամիներուն շարքին կ'անցնին։

Կիլիկիա՝ իսլամ Արևելքի մէջ միակ քրիստոնեայ պետութիւնը կը մնար, որ իր յոյսը Արևմուտքի վրայ դրած էր։ Արևմուտքի միջամտութեան վերջ տալու համար պէտք էր ջնջել Արևելքի մէջ Արևմուտքի միջամտութիւնը հրաւիրող այս պետութիւնը, ինչ որ բոլոր իսլամ պետութեանց ձգտումը եղաւ։

Հետևաբար ԺԴ. դարուն մէջ շարունակ հարուածներ կրեց Կիլիկիոյ Հայոց թագաւորութիւնը և երկիրը քանիցս մատնուեցաւ սոսկալի աւերներու, կոտորածներու և գերառութեանց և վերջապէս բոլորովին կորոյս իր անկախութիւնը 1375ին։

Այս անհնարին նեղութիւնները պատճառողները առհասարակ մահմետականներ էին, մասնաւորապէս Եգիպտացիք և Թիւրքմէնները, որոնց գործադրած խժդժութիւններէն ազատելու համար Կիլիկիոյ Հայ բնակչութիւնը մեծ զանգուածներով, մանաւանդ Լևոն Ե.ի գերի իյնալէն և երկրին անկախութիւնը կորսնցնելէն յետոյ, թողուցին իրենց երկիրները և հեռաւոր տեղեր ապաստանեցան։ Ասոնցմէ շատերը քրիստոնեայ Արևմուտքի ճամբան բռնեցին, ոմանք Լատին ասպետներու քաղաքները ապաստանեցան և ոմանք ալ հոն ուր հանգիստ և խաղաղութիւն գտնել կը յուսային։

Մեծ Հայաստանի բնակչութիւնն ալ առհասարակ հրապուրուած է դէպի Լեհաստան և դէպի Խրիմ և ուրիշ երկիրներ մեկնելու։

Այնպէս որ շարժումը դէպի քրիստոնեայ երկիրներն էր։

Կապադովկիա, եթէ ոչ Հայաստանի և Կիլիկիոյ պէս, բայց որոշ

չափով մը ինքն ալ խաղաղ երկիր մը չէր Ներկայացներ։ Միայն թէ ԺԴ. դարուն, մանաւանդ Արթինայի տիրապետութեան շրջանին, բացառիկ վիճակ մը ունեցած ըլլալուն համար կարելի է ենթադրել թէ Մեծ Հայաստանէն և Կիլիկիայէն որոշ թուով Հայ գաղթականներ ընդունած է։

Օսմ. պետութիւնը, մանաւանդ իր կազմութեան առաջին շրջանին, բարեացակամ վերաբերում մը ունեցած է բոլոր քրիստոնեաներուն բայց մանաւանդ Նկատմամբ Հայոց, որոնցմով լեցնել կը ջանար իր տիրապետութենէն խոյս տուող Օրթոտոքս քրիստոնէից տեղը, որպէսզի իր գրաւած երկիրները չամայանան, արհեստները և արուեստները չանչքանան։

Կեսարիոյ շրջանակը՝ Նախ քան Օսմ. տան երկիրներուն կցուիլը եթէ Հայ գաղութներ չէ ընդունած գոնէ սա որոշ է թէ չէ դատարկացած այն չափով որ դատարկացան Հայաստան և Կիլիկիա։

Ընդհակառակը պատճառներ ունինք կարծելու թէ Կեսարիա, իբր համեմատաբար անդորր և ապահով շրջան մը, Նոյնիսկ ապաստան տուած է Հայ գաղթականներու — ինչպէս Արթինայի շրջանին — և ընդունած է Հայ գաղթականներ, երբեմն ինքնաբերաբար եկած և երբեմն ալ բռնի, վասնզի Ղարամանի պէյերն ալ Նման Դանիշմանդեանց և Ռումի Սելջուկեանց ուրիշ տեղերէ բնակիչներ տեղափոխած են։

Ասոր փաստը մեզի կու տայ յիշատակարան մը որ 1336ին Ղարամանեանց Կիլիկիոյ վրայ ըրած յարձակումները Նկարագրած ատեն (տես վերը 569) կ'ըսէր.

«Եւ զամէնն ի սուր մաշեցին սուսերի
«Եւ զայլն ի Մսր վարեցին գերի
«Եւ զկէսն ի յերկիրն Խարամնի»

«Խարամանի երկիր» բացատրութիւնը դժբախտաբար անորոշ է, վասնզի անիկա բաւական ընդարձակ էր։ Գոնիա, Լարանտա (= Ղարաման), Իսաւրիա, հին Պամփիլիա և հարաւային Կապադովկիան իր իշխանութեան տակ էին։ Սակայն Նկատելով որ առաջին տեղը Կեսարիոյ կը պատկանէր թէ՛ իբր կեդրոն և թէ՛ իբր վաճառաշահ քաղաք, հաւանական է որ հոն տարուած են մեծ մասամբ այդ Հայերը։

Անուրանալի է որ Ղարամանի պետութեան տիրապետութեան ենթարկուած երկիրներէն մէկ մեծ մասը, մանաւանդ Սելեւքէ, Էրմէնէկ, ինչպէս նաև Լարանտա, Էրէյլի և Ղարաման, Նիկտէ և Պոռ քաղաքները այնպիսի շրջանակներ են որոնք Հայկական իշխանութեան ալ ենթարկուած են և գէթ այդ առթիւ արդէն հայաբնակ եղած են։

Հնուց գտնուած այդ քրիստոնեայ՝ Հայ և Յոյն բնակչութեան վրայ Ղարամանեանց տիրապետութեան շրջանին Նորեր ալ կու գան աւելնալ Կիլիկիայէն, և գոյացնել բազմութիւն մը Հայոց, որոնք ինչպէս կը տեսնուի Ֆաթիհ Սուլթան Մէհմէտ Բ.ի հրամանով, մի քանի անգամ տեղափոխուած են Կ. Պոլիս, ամէն անգամ որ Ղարաման-Օղլուներու հետ գործ ունեցած է այս Սուլթանը։

Այսպէս Գրիգոր վրդ. Դարանաղցի որ իր ժամանակագրութեան սկիզբը ունի քաղուած մը «Պատմութիւնք ժամանակաց կարճ ի կարճոյ ժամանակաց անցելոյ, զոր ոմանք գրեալ են, բայց ո՛չ զժամանակն եւ ո՛չ զտեղի եւ



ո՛չ զանուն գրողին է յայտնի», այս շարքին մէջ ունի սա տողերը, «թվին ՋԺԷ. (= 1468) այս Սուլթան Մուհամմատս զնաց բազում զօրօք ի Ղարամանն եւ զերկիրն էառ եւ զմարդն սուրկուն եբեր ի Ըստամբօլ» (էջ 10)։

1479ին երկրորդ տեղափոխութիւն մըն ալ կատարուած է, ինչպէս կը հասկցուի Ամիրտովլաթ բժիշկին Սաղմոսին յիշատակարանէն ուր կ'ըսէ թէ «Ի թուականիս Հայոց ՋԻԸ (= 1479) սուրկուն արար խոնքարն զՂարամանին աշխարհին զՀայ ազգս, եւ զիս անպիտան հոգս զՄարտիրոս, հետ բերին 'ի Կոստանդնուպօլիս, առ ոտս սուրբ վարդապետին մերոյ տէր Մաթէոսի Սեբաստացոյ(1), եւ Աբրահամ վարդապետի Տրապիզոնեցոյ, որ եւ զոքայ ալ խոնղքարն բերել էր վասն պատրաստութեան համար եւ սոքա ոչ առին յանձն լաւ համարելով զմիայնակեցութիւն, քան թէ փառք առնուլ ի մարդկանէ» (տես ՀԱ. 1895, 247–8)։

Կը տարուիմ մտածել թէ Մարտիրոս՝ որ եկեղեցական մըն է և աբեղայ մը — ինչպէս կը հասկցուի քիչ յետոյ — ինչպէս որ Ղարամանիայէն բերուած էր, նոյնպէս նաև աւելի կանուխ, 1478ին հաւանօրէն բերուած պէտք է ըլլան Մատթէոս Սեբաստացի և Աբրահամ Տրապիզոնցի վարդապետները, ապահովաբար իրենց վիճակներէն բերուած Հայերու հետ։

Այսոնց պատրիարքութիւն կ'առաջարկուի և կը մերժեն, ուստի պատրիարքութիւնը կը տրուի Նիկողայոս եպիսկոպոսի մը (1478–1489) որուն համար փաստեր կան թէ Անկիւրիոյ Հայոց առաջնորդն էր(2) և հաւանօրէն այդ քաղաքէն Կ. Պոլիս բերուած Հայոց հետ հոն եկած էր, վասնզի ինչպէս Համմէր (Գ. հտ. 212) կը հաստատէ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. Կ. Պոլսոյ գրաւման պահուն զայն գրեթէ բոլորովին դատարկացնելէ յետոյ իր բնակիչներէն, գործադրած է գաղթեցման գրութիւն մը բոլորովին նորօրինակ. Անիկա աշխատած է իր նոր մայրաքաղաքը շէնցնել և բնակչութեամբ լեցնել, հիւսիսային և արեւելեան Փոքր Ասիայէն բնակիչներ հոն փոխադրելով։

(1) 1489ին «ծաղկեալ էր Մատթէոս վարդապետ Սեբաստացի, այր բանիբուն եւ գիտնական, որ անուն եւ համբաւ հռչակեալ եւ տարածեալ էր ի մէջ ազգիս: Զսա յիշէ Առաքել պատմագիրն թէ Մատթէոս վարդապետն էր ի վանս Սեբաստիոյ: Այս Մ. վրդ.ն ես գրել .... բոլոր գրով ծաղկեալ փառազարդ ճառս տարեգիրք մի եւ ես յիշատակ ի վանս Ս. Նշանիս, յորում գտաք նկարեալ զպատկերն փրկչական բազմեալ յաթոռ եւ առաջի նորա զՄատթէոս վարդապետն Աւետարան ի ձեռին՝ զոր մատուցանէր տեառն եւ ասէր. «Ո՛վ անսկիզբն ծնողյ հօր բան, որ ծաղկեցար յազգս մարդկան եւ զայս մատեան աստուածաբան մեզ հնչեցեր ձայն ցնցութեան: Ահա առեալ զքոյս քեզ տամ. բարձրեալ ի ձեռս առաջի գամ, առ զայս նուէրս բարեխնամ, եւ յիս նայեա տէր հայեցակամ» եւ ի վերջն գտաք ոտանաւոր տողիւք գրեալ այսպիսի ինչ: «Ես Մատթէոս մեղօք լցեալ Սեբաստիոյ վարդապետ լեալ, դատարկ անուամբ արժանացեալ, գործոց բարեաց թափուր մնացեալ եւայլ: «Յիշին միաբանք Ս. ուխտիս այնր ժամանակի. Ղազար եպ. Շմաւոն, Ղազար, Աստուածատուր եւ Յոհաննէս վարդապետք» (Դիւան, Ժ. հտ. 393–4, Յովհաննէս Սեբաստացի)։

(2) Տես Տաճար, 1913, էջ 447, Բաբգէն եպ. Կիւլէսէրեանի «Գաղատիոյ Առաջնորդներուն գաւազանը կամ ցանկը» յօդուածը, ուր կը յիշատակուի Նիկողոս եպ. մը իբր առաջնորդ Էնկիւրիի 1475-1485(?) թուականներուն։

Այսպէս ըստ Համմէրի (Նոյն) Լազեր, Գարամանցիներ, Իլլիրեացիներ և Յոյներ, բերուեցան պետութեան կեդրոնը, Պոնտոսէն, Կապադովկիայէն, Սերպիայէն և Պելոպոնէսէն առնուելով։

Ամէնէն հարուստ բնակիչները այն տասերկու մայրաքաղաքներուն որոնք նուաճուած էին, որոշուած էր բնակիչ դարձնել Սուլթաններու բնակավայրին (Համմէր, Նոյն)։

«Շատ պզտիկ մասը այս գաղթականներուն, ինչպէս Գարամանէն բերուածներուն, իսլամ էին: Միւսները բոլորն ալ քրիստոնեայ, զանազան դաւանանքէ, որոնք ստացան արտօնութիւն կատարելու իրենց պաշտամունքը» (Համմէր, Գ. հտ. էջ 212)։

Այս քրիստոնեաներուն մէջ շատ կարեւոր թիւ մը կը ներկայացնէին նաև Հայերը, որոնք Օսմ. տիրապետութեան ենթարկուած բոլոր երկիրներէն, մասնաւորապէս Փոքր Ասիայէն և Քէֆէէն մայրաքաղաք փոխադրուած են, ինչպէս կը վկայէ Հայ գրիչ մը, 1344ին 'ի Քէֆէ գրչագրուած Աւետարանի մը վերջը, գրելով թէ «ի դառն եւ անբարի ժամանակիս ... քրիստոնեայք տարաշխարհիկ եղեալ սուրգուն», կը բերէ «Սուլթան Մուհամմատն ի յԸստամպօլ ոչ թէ յԱնկուրիոյ միայն, **այլ յամենայն աշխարհէ որ ընդ իւր իշխանութեամբն է** եւ յանապազ ի բերել ինքն է», և կ'աւելցնէ թէ «բայց յողորմութենէ յԱստուծոյ ա՞յն ինչ է որ սիրով ընդունեցաւ իշխանին զՀայոց ազգս եւ ամենայն քաղաքաց եկեղեցեաց շնորհեաց շէն եւ փարթամ եւ մեծ» (ՀԱ. 1926, 238)։

Միայն հետաքրքրական է գիտնալ թէ Ամիրտոլվաթի Սաղմոսին գրիչը «Մարտիրոս Աբեղայ» որ կը վկայէ թէ 1479ին Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. «Ղարամանին աշխարհին զՀայ ազգս» «սուրգուն արար» և բերաւ Կ. Պոլիս(1), «Ղարամանի աշխարհ» ըսելով ի՞նչ կը հասկնայ։

Տրուած ըլլալով թէ Գարաման քաղաքին մէջ գտնուող Հայոց թիւը այնքան մեծ չէր կրնար ըլլալ, նոյնպէս նկատելով որ Գարաման քաղաք բացատրութիւնը չի գործածուիր, այլ յատկապէս կարծես թէ կը չեշտուի «աշխարհ» բառը, կուգանք այն եզրակացութեան թէ իսկապէս երբեմն Գարամանեանց տիրապետութեան տակ գտնուած երկիրներու Հայոց վրայ է խօսքը, որոնք մասնաւոր հրովարտակով մը փոխադրուած են Կ. Պոլիս 1479ին։

Հոս դիտել տալ աւելորդ չըլլայ թէ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. երբ Գարամանի իշխանական ընտանիքին մէջ Իպրահիմի յաջորդութեան խնդրով պառակտում ծագեցաւ և գահաժառանգ նշանակուած Իսհագի դէմ ելան իր միւս մեծ եղբայրները և Օսմանեան Սուլթանին միջամտութիւնը խնդրեցին և այս առիթով Սուլթանը մտաւ Գարամանի աշխարհը և գրաւեց Իկոնիոնը, և իր վէզիրը՝ Մահմուտ փաշան ղրկեց Լարանտա (= Գարաման) քաղաքին վրայ, Իսհագ փախուստ տուաւ և գրեթէ Գարամանի աշխարհը ամբողջութեամբ նուաճուեցաւ, 1466ին (Այվազովսքի, Պատմ. Օսմ. Ա. 205)։

Այս առթիւ կը պատմուի թէ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. կը հրամայէ Մահմուտ փաշայի «զամենայն արուեստաւորս Իկոնիոնի եւ Լառէնտայ խաղացուցանել 'ի Կոստանդնուպոլիս» (Նոյն)։ Մահմուտ փաշա

---

(1) Ասոնք հաստատուած են Սամաթիա, շուրջը Սուլու Մանաստըր կոչուած Ս. Գէորգ եկեղեցւոյն, որ նախապէս յունական էր և յետոյ Հայոց տրուեցաւ։



վասնզի «ըստ յաճախ զքաւէր բարուցն խնամեալ էր յոմանս» այս պատճառով կ'ամբաստանուի Յոյն ուրացեալ նախանձորդէ մը՝ Ռում Մէհէմմէտ փաշայէն, և պաշտօնանկ կ'ըլլայ (Նոյն)։

Անկէ կը հասկցուի թէ Գարամանի արհեստաւորները — անշուշտ ստուար մեծամասնութեամբ Հայեր և Յոյներ — արդէն 1466ին Գոնիա և Գարաման քաղաքներէն փոխադրուած էին Կ. Պոլիս — ինչպէս Դարանաղցի ալ կը հաստատէր — և քանի մը տարի յետոյ՝ 1470ին երբ Ռում Մէհէմմէտ փաշա չարաչար պարտուած Գասըմ պէյէն պաշտօնանկ եղած էր և իրեն յաջորդած Պօսնայի կուսակալ Իսհագ փաշան, ան ալ իր կարգին երբ գրաւած էր Գարամանի գլխաւոր ամուր վայրերը, բնակիչները փոխադրած էր Կ. Պոլիս (Այվազովսքի, Օսմ. Պատմ. Ա. էջ 209),

Նոյնպէս Քաթերինօ Զենօ որ Վենետիկի հասարակապետութեան կողմէ Ուզուն Հասանի քով դեսպան ղրկուած է 1471էն 1474, իր ուղեւորութեան նկարագրութեան մէջ կը պատմէ թէ Ուզուն Հասան երբ չարաչար կը պարտուի 1474ին, Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. իր զաւակը Մուսթաֆան և Կէտիկ Ահմէտ փաշան կը թողու Գարաման, զայն բոլորովին նուաճելու համար։

Վենետիկի դեսպանը կ'ըսէ թէ «Ահմէտ փաշա մեծ բանակով գնաց դէպի Լառանտա (իմա Լարանտա=Գարաման), Գարամանիայի միապետին մէկ քաղաքը, զետեղուած Տաւրոս լերան մօտ, եւ կեղծելով թէ խաղաղասիրական մտադրութիւններ ունի բնակչութեան հանդէպ, աստիճանաբար անիկա սիրաշահեցաւ գլխաւորները, քաղաքավարութեամբ ու ընծաներ հրաւիրելով երբեմն մէկը, երբեմն միւսը իր հետ ճաշելու: Ժամանակ մը այս կերպ վարուելով փարատեց բոլոր կասկածները իր եւ բանակի մասին: Անիկա օր մը նշանակեց իր մեկնումին համար, որմէ առաջ հանդիսաւոր խնջոյք տուաւ բոլոր գլխաւորներուն, որոնք երբ իր հետ զուարթօրէն կ'ուտէին եւ կը խմէին, իր մարդիկը ձերբակալեցին եւ խեղդամահ ըրին զանոնք գաղտնի վայրի մը մէջ, ապա առանց դժուարութեան մտնելով **յունական երկիրը**, հաւաքեց ժողովուրդը եւ ուղարկեց Յունաստան, անոնց տեղը ուրիշներ տեղաւորեց այնտեղ բնակելու համար» (Յովհաննէս Ցակոբեան, Ուղեգրութիւններ Ա. 166–167)։

Ուրեմն 1466ին, 1468ին և 1470–1471ին երեք փոխադրութիւններէ յետոյ 1474էն քիչ յետոյ Գարաման քաղաքէն սկսեալ մինչև Տաւրոսեան լեռները տարածուած շրջանակին բնակչութիւնը Դ. անգամ բռնագաղթի ենթարկուած է և թերեւս այս աշխատանքը շարունակուած է մինչև 1479, կամ այդ 1479ին Դ. անգամ աքսորի հրաման մը արձակուած է գուցէ այս անգամ միայն Հայոց համար։

Գոնիա և Գարաման շատ մեծ թուով Հայեր չեն բնակած, հետեւաբար 2–3 անգամ անոնք պարպուելէն յետոյ ստուարաթիւ Հայեր կարելի չէր գտնել հոն 1479ին, փոխադրելու համար Կ. Պոլիս։

Ուստի պէտք է ընդարձակ իմաստով առնել Մարտիրոս Աբեղայի «Գարամանի աշխարհ» բացատրութիւնը և անոր մէջ ենթադրել շատ իրաւամբ նաև Կեսարիան, և վստահութեամբ ըսել թէ «Գարամանի աշխարհ»էն Կ. Պոլիս փոխադրուած Հայոց մեծամասնութիւնը Կեսարիայէն և Արգէոսի ստորոտը տեղաւորուած Հայերէն պէտք է ըլլան, վասնզի Գարամանի տիրապետութեան շրջանակին մէջ առաւելապէս և ամէնէն մեծ թուով Հայեր պարունակող շրջանակը այդ կողմերն էին։

Այս պարագային Կ. Պոլսոյ հայութեան ամէնէն աւելի ձեռներէց

և ամէնէն աւելի յառաջադէմ և ամէնէն աւելի հմայիչ անուն մը ունեցող Հայ թաղին, Սամաթիոյ պատուական Հայութեան նախնիքն ալ Կեսարացիք կ'ըլլան։

Իրենց գաղթականի դժբախտ կեանքին մասին տրուած տեղեկութիւնները առաւելապէս զիս տրամադիր կը դարձնեն ամրապնդուելու այս համոզումիս մէջ, վասնզի կը պատմուի թէ սոնք նախ բնակեցուցուած են Ղազրիս մենաստանին (հաւանօրէն արդի Ս. Գէորգ, Սուլու Մանասթըր եկեղեցիին տեղը) առջև գտնուած անտառին մէջ վրաններու տակ, ամենավատթար դրութեան մատնուած և նողկալի աղտոտութեան մը մէջ, այնպէս որ քիչ յետոյ ժանտախտի մեծ համաճարակ մը ահագին կոտորած տուաւ անոնց (տես Հրանդ Ասատուր, Ընդարձակ Օրացոյց Հիւանդանոցի, 1901, էջ 82, Գ. Հնասէր ԲԶՄՎ. 1928, էջ 210 և Արեւելք, 1932, թ. 282)։

Սակայն այս ձեռներէց Հայերը, որոնք թշնամանքը և արհամարհանքն ալ կը կրէին տեղացի Յոյներուն, առանց յուսահատելու, իրենց ձեռներէցութեամբ կրցան ամէնէն ստորին գործերու իսկ յանձնառու ըլլալով և սակաւապետութեամբ, իրենց համար քիչ քիչ դիրք ստեղծել և կամաց կամաց եկեղեցիին շուրջը տուներ շինել և տեղաւորուիլ, և դիրք ապահովել (տես ԲԶՄՎ. 1928, էջ 210 և Հրանդ Ասատուր, նոյն, էջ 82)։

Ասիկա որքան Հայկական առաւելապէս Կեսարիացական առաքինութիւն մը ըլլալով, իրաւունք ունենալ կը կարծեմ ենթադրելու թէ Հայերը որ «Գարամանի աշխարհ»էն բերուած են խոշոր տոկոսով, պէտք է Կեսարացիներ ըլլան։

Հետեւաբար հակառակ անոր որ Կեսարիոյ և շրջակայից Հայութիւնը իր գոյութիւնը պահած էր ԺԴ. և ԺԵ. դարերուն տիրող դժբախտ պայմաններուն մէջ իսկ, շրջանին վերջը շատ զօրաւոր հարուած մը կը կրէր բանի տեղահան ըլլալով և Կ. Պոլիս փոխադրուելով։

Այս երկու դարու մօտ ժամանակամիջոցին խռովեալ օրեր ըլլալուն և ժողովրդային բարօրութեան խանգարեալ և բարգաւաճման՝ ընդհատեալ ըլլալուն փաստը կը տեսնուի նաև Հայ մտաւորական կեանքին մէջ որ գրեթէ կը դադրի։

Արդարև նշանակելի է որ Սելջուկեանց շրջանին ծնունդ առնող Հայ մտաւորական և ուսումնական շարժումը որուն յայտարար նշաններն էին գրչագրական այն աշխատութիւնները որոնք կը կատարուէին Կեսարիոյ շրջանակին մէջ, գրեթէ կասած են ԺԴ. և ԺԵ. դարերուն, ուր իրարու ձեռքէ կը յափշտակեն Կեսարիան զանազան իշխանութիւններ։ Այնպէս որ 1300էն 1438, ո՛չ մէկ Կեսարիա գրչագրուած ձեռագիրի կը հանդիպինք և 1438էն 1471, միայն երկու ձեռագիր (1438ին և 1469ին գրուած) ծանօթ է մեզի, ինչ որ կատարեալ անշքացում մըն է, քանի որ այս շրջանը՝ մեզի աւելի մօտ՝ աւելի մեծ հաւանականութիւն կ'ընծայէր ձեռագիրներու անկորուստ մեզի հասնելուն։

Ասիկա բաւական յատկանշական իրողութիւն մըն է որ կ'արժէ ի վեր առնել, գաղափար մը տալու համար թէ երկրին խռովեալ վիճակը որքան յայտնի կերպով ազդած է ժողովուրդին վրայ։

Ասիկա բաւական էր մեզի համոզելու համար թէ Հայոց կեանքը որքան երանեալ տատանեալ եղած է այս շրջանին, ուրկէ այնքան շատ քիչ տեղեկութիւններ հասած են մեզի։



ԺԶ.

# ԱՐԳԷՈՍԻ ՇՐՋԱԿԱՅՔԸ
# ՕՍՄ. ԹՈՒՐՔԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

## (1471ԷՆ ՄԻՆՉԵՒ ՀԻՄԱ)

Գարամանի նուաճումէն յետոյ երբ Կեսարիա Օսմ. պետութեան կցուեցաւ, անիկա ենթարկուեցաւ Անատոլուի պէյլէրպէյութեան, որ Ռումելիի պէյլէրպէյութեան հետ կը ներկայացնէր տէրութեան երկու մեծ բաժանումներէն մին։

Անատոլուի պէյլէրպէյին կը նստէր այն ատեն Էնկիւրիւ, սակայն Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտի հրամանով այդ թուականէն յետոյ անոր նստոցը եղաւ Քէօթահիա։

Անատոլուի պէյլէրպէյին ստորադասուած էին բոլոր տէրութեան Ասիական բաժինին էյալէթները այսինքն կուսակալութիւնները, ո-



ՊԱՅԱԶԻՏ Ա. ԵԼԴԸՐԸՄ
(1381 - 1403)
Կեսարիան Ա. անգամ գրաւող
Օսմ. Սուլթանը
(Բարիզի Ազգ. մատենադարանի
պատկեր)



ՖԱԹԻՀ ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ
(ծն. 1430 — մեռ. 1481)
Վերջնապէս Կեսարիան գրաւող
Օսմ. վեհապետ

րոնցմէ մէկն էր Գարամանի էյալէթը, որ Ֆաթիհ ինքն կազմեց։
Կեսարիա այդ էյալէթին մէկ Լիվան կամ Սանճագը կը կազմէր, և
նստոյն էր Միւթէսէլլիմի կամ Միւսէլլիմի մը։ Այսօրուան բաժանմանց
համաձայն միւթասարըֆութիւն մըն էր Կեսարիա, թէև ունէր շատ
աւելի մեծ ընդարձակութիւն քան այսօրուան կուսակալութիւնը։
Կեսարիոյ Սանճագին ենթակայ էին մինչեւ անցեալ դարուն կէ-
սերը վեց Գազաները որոնք էին, 1. Գայսէրի, 2. Ինճէ-Սու, 3. Գարահիսար

Տէվէլու, 4. Եաճեալը, 5. Կիւսբէրէ, և 6. Իսլամլը, այնպէս որ Կեսարիոյ ենթարկուած էին յետոյ Ատանայի կցուած Գօզանի սանճագին մէկ մասը, այսինքն Հաճըն և իր շրջակայքը։ Ցետոյ կուսակալութեանց նոր բաժանումներուն ատեն Կեսարիա կազմեց էնկիւրիի կուսակալութեան 5 սանճագներէն մին, իրեն ստորադաս ունենալով միայն 3 գազա, (1. Գայսէրի, 2. Տէվէլի, 3. Ինճէ-Սու)։ Իսկ շատ վերջերն էր որ վերածուեցաւ միւսթագիլ միւթէսարրֆութեան և ապա կուսակալութեան, ինչպէս բացատրուած է (տես 43)։

Երբ Ֆաթիհ գրաւեց Կեսարիան և կազմեց Գարամանի էյալէթը, այդ կուսակալութիւնը ծայրագաւառ մըն էր, վասնզի, թէեւ ինչպէս Թուրք բանաստեղծը ըսած էր, աննշան Աշիրէթէ մը կազմուած էր հսկայ պետութիւն մը և սարսափահար ըրած Եւրոպան, Իգօնցօի կիրճերէն թափանցել սպառնալով Իտալիոյ դաշտերը, սակայն տակաւին չէր անցած Տաւրոսէն անդին՝ դէպի հարաւ և Եփրատին միւս կողմը՝ դէպի արեւելք։

Կեսարիա Թուրք տիրապետութեան ենթարկուած օրերուն, այսինքն ԺԵ. դարուն վերջերը, Եփրատէն անդին կը տիրապետէր մեծ պետութիւն մը՝ Պարսկաստան, որ նոր կազմուած էր տեղական փոքր իշխանութիւններու ձուլմամբ և Թուրք հարստութեան մը գլխաւորութեամբ, որ ազգայնացած էր ընդգրկելով և պետական կրօնք հռչակելով Պարսիկներու հերձուածը՝ Շիի իսլամութիւնը, մինչ Օսմ. Սուլթանները կը մնային հաւատարիմ Սիւննի դաւանանքին, և իբր պետ ու հրամանատարը անոր, կ'ատէին Շիի աղանդաւորները։

Երկու պետութիւնները ճակատագրականօրէն պարտաւորուած էին շարունակել այն պայքարը որ երբեմն աշխարհի այդ մասին մէջ մղած էին Պարթեւները և Հռոմէացիք, Սասանեանք և Բիւզանդացիք, Արաբները և Ցոյները, Հայաստանի բարձրաւանդակի տիրապետութիւնը նկատելով անհրաժեշտ կռուան մը իրենց նուաճումները տեւականացնելու համար։

Եւ առիթը բախումի մը համար շուտով ներկայացաւ։ Գարամանի պէյը՝ Իսհագ ապաստանեցաւ Պարսիկ վեհապետ Ուզուն Հասանի քով, անոր օգնութեամբ իր տէրութիւնը վերահաստատելու համար և ինչպէս տեսնուեցաւ, չյաջողեցաւ, հակառակ նոյնիսկ Վենետիկցիներու դաշնակցութեան։ Օսմանեանք Դերջանի վճռական յաղթանակով, արեւմտեան Հայաստանի տէր դարձան (1473)։ Այս պատճառով շուտով Կեսարիա սահմանագլուխի քաղաք մը ըլլալու անպատեհութիւններէն փրկուեցաւ, սակայն չազատեցաւ բանակներ հիւրընկալելու դժնդակ հարկէն, վասնզի Օսմ. պետութիւնը գրեթէ անընդհատ կռիւ մղեց իր արեւելեան ու հարաւային սահմաններուն վրայ, և թուրք բանակներ շարունակ անցան Փոքր Ասիոյ բոլոր ճամբաներու վրայ գտնուող Կեսարիայէն։

Գաղափար մը տալու համար թէ ի՛նչ պատուհաս մըն էր բանակի մը անցք տալը քաղաքի մը համար, կը բաւէ թուել միայն այն տուրքերը որոնք ան տալու կը պարտաւորուէր, առանց յիշելու բոլոր այն վայրագութիւնները և գազանութիւնները որ զօրքերը կրնային կատարել սանձարձակ։ Այսպէս անոնք պատերազմական ծախուց համար Թէքէալիֆի Ուրֆիյէ ընդհանուր անունին տակ գանձուած զանազան տուրքերէն՝ ինչպէս Իմտատիյէ Սէֆէրիյէ (պատերազմական նպաստ) և



Իանէի Ճիհատիյէ (սուրբ պատերազմի նպաստ) անուն հարկերէն զատ, կը պարտաւորուէին վճարելու կարգ մը տուրքեր զինուորներու հանգստութեան և ուտեստին համար, երբ բանակը տեղ մը կանգ առնէր։ Այս տուրքերն էին, Մուգապէլէ Ագչէսի (Հատուցումի ստակ), Ավարըզ Ագչէսի (Արկածադրամ), Մէնզէլ Մալը (Իջեւանի գին), Գօնաք Մասրաֆը (Օթեւանի ծախք), Պէտէլի Նիւզիւլ (Իջեւանի փոխարժէք), Խան վէ Խանէ վէ Զայըր Քիրասը (Խանի և տունի և արօտի վարձք), Փէքսիմաթ Պահասը (Պաքսիմաթի գին), Զախիրէ Պահա (Ուտեստեղէնի գին), Ուլուֆէ Պահա (Թոշակի գին), Գումանեա Պահը (Պարէնագին), Թայենեմաթ Պէտէլի (Օրապահիկի փոխարէն), Նան Պահա (Հացագին), Գաթըր Պահա (Ուտեստի գին), Թաամիյէ Նէվալէ Պահա (Կերակուրի ծախքի փոխադրում) (տես Գ. Չնաւէր. ԲԶՄՊ. 1934, էջ 33-34)։

Այսպէս Կեսարիա, հեռու արեւելեան սահմանագլուխէն, թշնամի բանակներէն ուղղակի գրեթէ բնաւ չեղաւ, սակայն կրեց այդ պատերազմներուն հետեւանքները, կողոպտուելով նիւթապէս և երբեմն տերազմներուն հետեւանքները, կողոպտուելով նիւթապէս և երբեմն ալ խուճապահար փախստական բնակչութեան ապաստանի վայր ծառայեց, և այս պատճառով ինքն ալ յաճախ սովի և համաճարակներու— անխուսափելի հետեւանքները պատերազմներու և անկարգ խճողումներու— աղէտին ենթարկուեցաւ։ Սակայն ամէնէն գլխաւոր չարիքը որ շարունակական պատերազմները պատճառած են բովանդակ երկրին, մշտնջենաւորումն էր պետական անկազմակերպութեան։ Ցանկարծական կերպով մեծցող այս Թուրք պետութիւնը բազմաթիւ երկիրներու աշխարհակալեց առանց անոնց իսկապէս տիրապետելու, վասնզի պետութեան սահմաններուն մէջ կային նուաճումի կարօտ բազմաթիւ շրջանակներ։

Եւ այս ո՛չ թէ պետութեան հիմնարկութեան առաջին օրերուն այլ նոյնիսկ տակաւին հարիւր տարիներ առաջ, երբ Օսմ. պետութիւնը, հինգ դարերէ ի վեր գոյութիւն ունէր։

Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, ԺԹ. դարուն սկիզբը, այդ անուան շրջանակները կը բաժնէ երկու դասերու (տես Աշխարհագրութիւն Չորից մասանց աշխարհի, Բ. մաս, հտ. Ե. 97), որոնցմէ մէկը կը կոչուէր Հիւքիւմէթ, որ «է այն երկիր՝ որ սեփական ստացուած է տոհմի ինչ եւ տէրք նորա են իշխանք, որք պայազատեն յորդւոց յորդի 'ի նոյն տոհմէ ըստ ժառանգութեան. նման իշխանութեանց՝ որք գտանին 'ի Գերմանիա, եւ այլ կողմանս Եւրոպիոյ: Բազում գտանին այսպիսի իշխանութիւնք յԱնատօլու ի մէջ քրտաց, ի փաշայութեան Տիարպէքիրու, Վանայ, եւ Պաղտատու, յորոց եւ ոմանք երբեմն երբեմն ապստամբին 'ի փաշայից եւ մարտ մղեն ընդ նոսա»: Իսկ երկրորդն էր Տէրէպէյութիւն որ «կոչի այն երկիր, զոր ունի ժառանգութեամբ ցեղ ինչ, որոց տէր եւ գլխաւոր կոչի **Տէրէ պէյ**: Բազումք գտանին յայսպիսեաց աստի ի Փոքրն Ասիա, յորոց եւ ոմանք են ապստամբք ի տէրութենէն»:

Այս երկու գլխաւոր բաժանումներէն զատ Հ. Ղուկաս Ինճիճեան, կը թուէ նաեւ Խաս, Հայէմէյն, Օճագլըգ և Ֆէրմանլը անունով հողամասեր, առաւել կամ նուազ առանձնաշնորհեալ։ Ինչպէս կը տեսնուի ԺԹ. դարուն սկիզբը Օսմ. պետութիւնը հինգ հարիւր տարիներու տեւողութենէ յետոյ, կը ներկայացնէր վարչական ու կառավարչական քաոսային վիճակ մը և աններդաշնակութիւն մը։ Անկէ դիւրին էր գուշակել թէ ի՛նչ վիճակ կը ներկայացնէր աւելի կանուխ, ուր գրեթէ ամէն ցեղապետ և կուսակալ, իբր ինքնիշխան տէր, ուզածը կը

գործէր աւազակներու խումբ մը գլուխը ժողված։ Ուրէ լեռ կամ կիրճ յելուզակներու անբռնաբարելի ապաւէն էր, ուր որջացած աւելի աւազակութեամբ կ'ապրէին։

Տաւրոսեան լեռնաշղթան որ իր ձորերով և կատարներով, ինչպէս նաեւ Տաւրոսէն մինչեւ Արգէոս տարածուած լեռնային հողամասերը, որոնք մեծ յարմարութիւններ կը ներկայացնէին այս կարգի աւազակային տարրերու որջերը հանդիսանալու, նոյնպէս բնակավայր ու կայան եղած են զանազան վաչկատուն և թափառիկ և վայրենի ցեղերու, որոնք դարերով իրենց ազատութիւնը պահած են, երբեմն միայն հարկի մը մատուցմամբ, նոյնիսկ երբեմն հպատակութեան այդ նշանին ալ զլացմամբ։ Անոնք առհասարակ Թիւրքմէններ էին, որոնք Թուրքերու հետ միեւնոյն արիւնը և լեզուն ունէին և գաղթած էին Կասպից ծովու եզերքներէն Փոքր Ասիոյ դաշտերը Պաղտատի խալիֆայութեան վերջերը։ Անոնք միշտ պահած են իրենց ռազմիկ նկարագիրը և մեծ մասամբ իրենց թափառիկ կեանքը, Եուրուք (=քալող) անունին տակ (Le vicomte de la Jonquière. «Histoire de l'Empire Ottoman.» 1914, Paris, Բ. հտ. 462) և պատուհաս դարձած իրենց կողոպուտներով իրենց նստակեաց դարձած ցեղակիցներուն, որոնք կը բնակէին մասնաւորապէս Կիլիկիա, քանի որ իրենց նշանաբան ըրած էին «թիւֆէնկ եօք, էքմէք եօք» խօսքը։ Այս Թիւրքմէն իշխանութիւններուն ամէնէն նշանաւորը կը հանդիսանար Դօզանեանցը, որուն սկիզբը աւանդութիւնը մինչեւ ԺԳ. դար կը հանէ։ Իբր թէ անոնց տոհմապետն Քուզան կամ Դօզան, Օսմանեան Թուրքերու նահապետին հետ արեւելեան Թուրքերու աշխարհին Իւչօք (=Եռանետ) նահանգէն, ուրիշ վեց ընկերներու հետ եկած էր Փոքր Ասիա։

Այս հնութիւնը կը ժխտէ Jonquière. (Բ. 518) որ Դօզանը կը ներկայացնէ քիւրտ և պետերէն մէկը՝ Վարսաք կամ Վարսակ (Pharsak) ցեղին և ոչ թէ Թիւրքմէն, ինչպէս աւանդութեան վրայ հիմնուած ըսած է Ալիշան։ Ըստ ֆրանսացի պատմագիրին Սուլթան Սէլիմ Ա. (1512–1520) իբր վարձատրութիւն այն ծառայութեան որ Դօզան իրեն մատուցած էր երբ ինքն Պարսից Շահ Իսմայիլի դէմ կը կռուէր (1513–1514), անոր տուած էր, թեթեւ հարկ մը վճարելու պայմանով, ժառանգական իշխանութիւն մը այն լեռնային գաւառին մէջ որ այսօր ալ Դօզան անունով կը ճանչցուի։

Քիչ յետոյ այդ իշխանութիւնը կը դառնար բոլորովին անկախ և կը մերժէր ճանչնալ Բ. Դրան հեղինակութիւնը։ Դօզան օղլուներու իշխանութիւնը, ինչպէս նաև այդ շրջանակին մէջ հաստատուած ուրիշ ցեղեր, երկար ատեն, պահեցին իրենց վաւեմի ազատութիւնները «ոռոգեալք ի ձորս եւ ի լերինս, վասն որոյ եւ Ջորաստանք կոչեցան (Ստրէ պէկի)» (Միսաքեան, 167)։

Իսկ հայկական աւանդութիւնը, որուն արձագանգ եղած են Չէյթունցի և Տր. Հ. Գալուստեան Դօզանեանց սկիզբը մինչև ԺԷ. դար կը յետաձգէ և անոնց կուտայ ստորին ծագում, թերեւս ցեղային ատելութեամբ։

Հայ աւանդութեան համաձայն «Այնթապու մէջ գտնուող մաղագործ գընչուներէն ոմանք *Խըզան* (չինկեանէ, աղքատ) կը կոչուէին երկու եղբայր՝ Քրիստոսի 1640 թուականին՝ կու գան Հարզան (Հաճըն)։ Անոնք իրենց արհեստը ժամանակ մը գործ ածելէ յետոյ՝ յանկարծ բաղդերնին կը բացուի։ Հաճընցի հայերը այդ



ժամանակ խնդրոյ մը պատճառաւ սաստիկ երկպառակած էին եւ չէին կրնար համաձայնութիւն գոյացնել մէջերնին, վասնզի ամէն մարդ կ'ուզէր որ իր խօսքն առաջ երթայ։ Խելացիներէն ոմանք այս չարեաց դարման մը տանելու համար նոր գիւտ մը կ'ընեն. կը խորհին այս նորեկ գնչուներն իրենց պետ ճանչնալ ու ամէն խնդիր անոնց դատաստանին յանձնել։ «Անոնք մոլեռանդ քուրմերուն պէս չեն, ուզած ատեննիս ալ կրնանք զանոնք վանել մեր մէջէն» ըսելով կը հաւանին ամէնն ալ այս խորհուրդին եւ Խըզաններն իրենց իշխան կ'ընդունին։ Բայց քիչ ժամանակէն այդ երկու մաղագործներ կը դառնան մէկ մէկ բռնաւոր եւ նեղելով, հարստահարելով կը մեծնան, ոչինչի մահմետականութեան ալ յարելով՝ Թուրքաց առջեւ համարում կ'ստանան։ Այդ ժամանակն է, որ իրենց *Խըզան* անունը *Դօզան-օղլու*-ի կը փոխեն։ Յետ ժամանակաց կրտսեր եղբայրը Հաճընէն ելնելով Սիս կ'երթայ, վրան յարելով կը նստի եւ այնտեղի Հայոց, մանաւանդ վանքին կը բռնանայ. այս ալ կը կոչուի Ջաբրըն օղլու։» (Զէյթունի անցեալէն եւ ներկայէն, 1900 Վիէննա, Ա. մաս 121–122, համմ. նաև Մարաշ կամ Գերմանիկ եւ Հերոս Զէյթուն, 1934, Նիւ-Եորք, 240)։

Իսկ Հայ ուրիշ աղբիւրէ մը գիտենք թէ ԺԸ. դարուն վերջերը «այր մի անօրինական(1) Յիւսուփ անուն Խզան օղլի կոչեցեալ (որ է դաւուլջի օղլի(2) կամ տանկացեալ)…զօրացեալ… առնու իշխանութիւն հիւսիսակողման լեռնախայրեացն Տորոսի, որ է եւ գիւղաքաղաքն Հայոց Հաջին, եւ օր ըստ օրէ զօրացեալ բռնացաւ եւ ի վերայ միւս կողմանն իշխեցողաց Տորոսի, զոմանս սպանեալ եւ զոմանս հալածեալ տիրէ բոլոր լեռնականացն, հիւսիսոյ եւ արեւմտեան կողմանց Տորոսի, … իսկ քաղաքին եւ սահմանացն Սսոյ։ Բնակութիւն կալեալ ինքեան մերձ ի Բարձր բերդ ի Բէլանեօյ ասացեալ տեղւոջ, եւ ընդվզեալ ապստամբի ի հպատակութենէ Օսմանեանց, եւ փոխէ զանուն իւր Դուզան օղլի եւ զլեառն Տորոս յանուն իւր անուանէ Դուզան Տաղի» (Դիւան Հայոց Պատմ. Դ. 729–730)։

Դօզան օղլուներու իշխանութիւնը ե՞րբ և ի՞նչ պայմաններու մէջ ալ հաստատուած ըլլայ, սա որոշ է թէ անոնք ո՛չ առաջինը և ո՛չ ալ միակն էին որ այդ լեռներուն տիրած էին։ Թիւրքմէն բազմաթիւ ուրիշ Տէրէպէյիներ կը կանխէին զիրենք Տաւրոսի լեռներուն վրայ, և իրենց կուտային գուցէ կեդծիքով պատմական ծագում մը և պատկառելի հնութիւն մը, ասով ինքզինքնին մեծարելի դարձնելու համար։

Աւանդութիւնը Օսմանեանց նահապետին Սիւլէյմանի և Քուզանի վեց միւս ընկերներէն մէկը կը ներկայացնէր Վարսաքը կամ Վարսաքը, որմէ իբր թէ կը սերէր նոյն անունով Թիւրքմէն տոհմը որ մինչև մեր օրերը կը պահէր իր գոյութիւնը։ Մէկ ուրիշն էր Իւզէր՝ որուն սերունդին բնակավայրն էր Իւզէրլիի գաւառը։ Իսկ ասոնց գլխաւորն էր Եիւրքէր որուն սերունդներն էին իբր թէ Եիւրուք անուն Թիւրքմէններ որոնք ծանօթ են իրենց Կիլիկիոյ մէջ ունեցած ծաւալով և գործունէութեամբ։

Եիւրքէրի որդին էր Րամազան որ հիմնադիրը հանդիսացաւ Րամազանեանց կամ Րամազան օղլուներու հզօր տոհմին և տէրութեան (տես Միսաքեան, 165)։

---

(1) Թերեւս գնչու ըլլալու ակնարկ։

(2) Առաքել Դաւրիժեցի ԺԷ. դարուն սկիզբը կը յիշէ ասպատակ մը Թաւուլ անուն որ Խարբերդի և Բալուի գաւառներուն մէջ աւերածութիւններ ըրած է։ Այս տունը արդեօք կապ մը ունի՞ Եուսուֆի հետ։

Ըստ Ալիշանի (Սիսուան, 167) Ռամազան խնդրեց և ստացաւ Հայոց թագաւորներէն՝ ազատութիւն իր և իր հետեւորդներուն հօտերը արածելու Կիլիկիոյ դաշտավայրերուն և լեռնակողմերուն մէջ և հետըզհետէ հաստատուեցաւ Կիլիկիոյ մէջ։

Երբ Հայոց Ռուբինեանց հարստութիւնը սկսաւ տկարանալ և բնակչութիւնը պակսիլ, մէկ կողմէն Թիւրքմէնները և անոնց միացած Աֆշարները և միւս կողմէ Դարամանեանք (որոնց ծագումը և զարգացումը բացատրուեցաւ) Ռուբինեանց հակառակորդ և թշնամի Եգիպտոսի Սուլթաններուն իբր կրօնակից, անոնցմէ շնորհ գտան, Կիլիկիան բաժնեցին իբր աւարատեղի, կէս ազատօրէն և կէս հարկ տալով Եգիպտացւոց։

Տեսանք նոյնպէս թէ, արեւմտեան Կիլիկիոյ մէջ 1378ին հաստատուեցաւ նաև Թիւրքմէն Ջիւլգատր–օղլուներու իշխանութիւնը որ Մարաշը կեդրոն ըրած էր և մինչև Տաւրոսեան լեռնաշղթան իր իշխանութեան տակ ունէր։

Մեզի համար յատուկ նշանակութիւն և կարեւորութիւն ունի նաև տուն մը որ Տաւրոսեան լեռներէն իջաւ «քալնեաց եւ կողոպտեաց ... զՍիս քաղաք Կիլիկեցւոց» 1601ին (Դաւրիժեցի, 634)։

Այս տունին պետն էր «Լաւանդն՝ որ Սարբչի կոչիւր» (Նոյն)։

Ասոր սերունդը տակաւին կ'իշխէր ԺԸ. դարուն կէսերը, ինչպէս կը հաստատեն թէ՛ Հայ և թէ՛ օտար աղբիւրներ։

Հայ յիշատակագիրը (Դիւան Հայոց Պատմ. Դ. 729) զայն կը կոչէ Լիւոն օղլու որ հաւանօրէն Սամրճի Լաւանդի յաջորդներէն մէկն էր։ «Լիւոն օղլի որ ասէր զինքն լինել յազգէ Լեւոն թագաւորի Հայոց, զկնի ժամանակաց դարձեալ հաւն իւր ի մահմետականութիւնն, որ էր ընդդէմ պատմութեան Հայոց, մանաւանդ թէ սուտ բոլորովին» (Նոյն)։

Հոս ինչպէս կը տեսնուի Կիլիկիոյ մեծագոյն մասին տիրակալող այդ տունը, հակառակ իր մահմետական կրօնքին Հայկական ծագումով կը պարծենար —թերեւս քաղաքագիտական նկատումով— Հայերու համակրանքը իրեն հետ ունենալու համար։ Յ. Յակոբեան (Ուղեգրութիւն, Ա. 352) այս տան կու տայ վրական ծագում զայն նոյնացնելով անծանօթ տուեալներով «մի քրիստոնեայ Լէնթուլ Դեղին (Lentul Degh) անունով, Վրացիներու» իշխանին հետ, որ յիշատակուած է 1571ին Վենետիկի դեսպան Վինչենձօ տ'Ալեսանտրի (V. d'Alesandri) տեղեկագրին մէջ, իբր հարկատու Շահ Թահմազի և ունէր 10.000 զօրք։ Անհաւանական չէ որ յետոյ Տաւրոս տեղափոխուած, հոն իսլամացած և տեղացիները սիրաշահելու համար իրենց Վրացի ծագումը Հայկականի վերածած ըլլան։ Ասոր նման ուրիշներ Տաւրոսի, Ամանոսի և Սև լեռան և ուրիշ լեռնային շրջանակներու մէջ աւելի կամ նուազ կարեւորութեամբ բազմաթիւ էին(1), որոնք ԺԴ. դարէն մինչև անցեալ դարուն կէսերը պահեցին իրենց անկախութիւնը։

(1) Վինչենձօ տ'Ալեսանտրի կը հաստատէ թէ ԺԶ. դարուն վերջերը (1571) կային «կարգ մը քրիստոնեայ ցեղապետներ Ջինդի (Chindi) կոչուած, որոնք կը բնակէին Փոքր Հայաստանի (հիմա Կիլիկիա) լեռներուն մէջ դէպի Միջերկրական ծով, եւ այս Ջինդիները, երբ ամէնքը միանան, կը հանեն եօթը կամ ութը հազար հեծելազօրք, գերազանցօրէն յաւ եւ միշտ ծարաւի կռուելու թուրքերուն դէմ» (Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւններ Ա. հտ. 352)։



իսկ Տաւրոսի հիւսիսային ոտքերէն մինչև Արգէոս տարածուած երկիրները նաև ազատ չէին այս բռնապետներու ազդեցութենէն։

Աւանդութիւնը կը բերէ յիշատակը; օրինակի համար, երեք հերոսներու Տէվ Ալիի, Խըտըր Իլիասի և Շէյխ Ալիի որոնք իբր թէ Էվէրէկի կողմերը նուաճած են։ Ասոնցմէ Տէվ Ալի, իր անունով կոչուած Տէվէլու ամրոցին մէջ հիմնած է իշխանութիւն մը, որ Տէվէլիի աղաներու գլխաւորութեան տակ մինչև ԺԸ. դարուն վերջերը տակաւին կը պահէր իր գոյութիւնը և այդ թուականներուն Դօզան Օղլուներէն նուաճուեցաւ, ինչպէս որոշ կը պատմէ Հայ յիշատակագիր մը ըսելով թէ ինչպէս «անտոհմական Յիւսուփ ... Խզան օղլի կոչեցեալ (որ է Տաւուլչի օղլի կամ տնանկացեալ) առնու իւր կին ի սահմանացն Կեսարիոյ ի Դաւալիոյ(1) գաւառէն, որ այժմ ասի Աւերակ(2), զայրի կին իշխողի Դաւալիոյ գաւառակի, ճոխ ընչիւք եւ խելացի», որով զօրանալով, վերջ կու տայ նաև վերոյիշեալ Լիւան օղլուի իշխանութեան որ «իշխէր սահմանացն Սսոյ, Վահկայ, Լամբրոնի, եւ Անարզաբայ ցՀանգիս (=Հաճըն ?)» (Դիւան Դ. 729) և այսպէս կը հիմնէ Արգէոսի ստորոտէն մինչև դաշտային Կիլիկիա, բաւական ընդարձակ իշխանութիւն մը, և կը դառնայ պատուհաս մը բոլոր շրջականներուն։ Միայն յիշատակել թէ Դօզան Օղլուները սպաննած են 1770 Սեպտեմբեր 10ին Գաբրիէլ Սսոյ կաթողիկոսը և վանքը կողոպտած (Սիսուան, 219 և Ազգապատում, 3071), 1784ին թունաւորած Եփրեմ կաթողիկոսը (Սիս. 219. Ազգապատում, 3173 և Դիւան Ժ. 327), 1721ին սպանած՝ Թէոդորոս կաթողիկոսը (Ազգապատում, 3174–3175) և վերջապէս 1823 Սեպտ. 15ին թունաւորած՝ Կիրակոս կաթողիկոսը (Ազգապատում, 3614) կարծեմ թէ բաւ է գաղափար տալու համար թէ իրենց իշխանութեան բնոյթը և նկարագիրը ի՞նչ էր։

Օսմ. պետութիւնը երկար ճիգերէ յետոյ, հազիւ ԺԹ. դարուն կէսերը կրցաւ այս Թիւրքմէն ցեղապետութիւնները ջնջել, որոնք իբր թէ ԺԸ. դարէն իսկ «Նստէին հրամանաւ Բդեշխին Կեսարիոյ, ընդ հպատակութեամբ Օսմ. պետութեան» (Դիւան Դ. 729), այսինքն ենթարկուած էին անուանապէս Կեսարիոյ միւթէսէլիմին, իսկ ԺԹ. դարուն սկիզբը, տակաւին Սարոսի Միջագետքին տիրացած, կը կազմէին առանձին վիճակ մը Մարաշի գաւառին մէջ Ճէպէլ–Քուզան–Սարըլը անունով, և մասնաւորապէս՝ Տաւրոսը անցնելու հարկադրուած ճամբորդներուն համար, պատուհաս մըն էին։

Տաւրոսի մէջ տեղաւորուած այս ինքնավար իշխանութիւններու շարքին կը պատկանէին նաև մի քանի հայկական Պէրաքլը (առանձնաշնորհեալ) կոչուած քաղաքներ, ինչպէս Զէյթուն(3) և

(1) Տէվէլու

(2) Էվէրէկ

(3) Jonquière (Բ. հտ. 515) կ'ըսէ թէ երբ կը կործանի Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը, յաղթականին սուրէն խուսափելու համար շատ մը Հայեր կ'ապաստանին Տաւրոսի կիրճերուն մէջ, իրենց շուրջը կը համախմբեն ազատասէր Հայերը։ Զէյթուն կ'ըլլայ այդ կայաններէն մին որ արագօրէն կը զարգանայ չորս ժառանգական իշխաններու կառավարութեան տակ։ Իր անունը առած է իր լեռները պճնող ձիթենիներէն ըստ Jonquièreի։ Զէյթունցի (Զէյթունի անցեալէն եւ ներկայէն, 1900, էջ 14) քաղաքին անունը Սեբէն լծորդուած ցոյց կու տայ, և

Հաճըն(1) որոնք կը պահէին իրենց տեսակ մը տէրէպէյիական անկախութիւնը՝ աւատական կարգով ճանչնալով դրացի աւելի ընդարձակ իշխանութեանց գերիշխանութիւնը։

Երբ այս էր կացութիւնը Կեսարիոյ հարաւակողմը, տարբեր չէր վիճակը անոր հիւսիսակողմը, ուր ԺԸ. դարուն կը գտնենք իշխանութիւնը Ջափան կամ Ջափար օղլու իշխանազուններու անուանի տոհմին «որ երբեմն ի հնումն եղեւ Թիւրքմէն աղայի» (Ինճիճեան, Աշխարհագր. Ա. մաս, Ա. հտ. 296-297)։

1807–1808ին երբ Նափոլէոնի դեսպանը՝ զօր. Գարտան կ'անցնէր Փոքր Ասիայէն կը հանդիպի Եօզկաթ անոր կեդրոնը և կը տեսնէ տիրող «սիրուած և ազդեցիկ իշխանը» որ կարող էր 40.000 ձիաւոր հանել և կը տիրէր այն երկիրներուն որոնք մինչև Թօգատ և Կեսարիա (Journal d'un voyage dans la Turquie d'Asie et la Perse, fait en 1807 և 1808, Paris, 1809, Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, Զ. հատ. 89-90) կամ գէթ մինչև Գըրշէհիր և երբեմն Պօզուգի սանճագը (Ինճիճեան, նոյն) կը տարածուէին։ Այս ընտանիքը իր ձեռք բերած ազդեցութեամբ այնքան պատկառելի էր որ Օսմ. հրամանատարները շատ անգամ խոհեմութիւն կը համարէին անոնց բարեկամութիւնը շահելու (տես Pière Amédée Joubert, «Voyage en Armenie et en Perse, fait dans les années 1805 և 1806», Paris, Յ. Յակոբեան, Ուղեգր. Զ. 195), և գրեթէ հաճութեամբ Սուլթաններու կը կառավարէին Փոքր Ասիոյ կեդրոնավայրը, երբեմն բոլորովին իբր ապստամբ և երբեմն ալ իբր հպատակ, կուսակալի հանգամանքով։

Օսմ. պետութիւնը՝ այս անկարգ ու ապստամբ ցեղերուն պատճառով, որոնք միշտ առիթի և պատեհութեան կ'սպասէին իրենց ապստամբութիւնը աւելի լայն սահմանի վրայ գործադրելու կամ իրենց հեղինակութիւնը՝ աւելի մեծցնելու համար, յաճախ մատնուած է ծանր տագնապներու։

Կեսարիա, իբր կեդրոնավայր կամ խարիսխ այն բանակներուն որոնք նուաճողական ձեռնարկներ ըրած են Տաւրոսի լեռնաշղթային մէջ ապրող ապստամբ ցեղերը ընկճելու, կարեւոր դեր մը կատարած է, երբ մանաւանդ աչքի առջեւ ունենանք սա իրողութիւնը թէ իրապէս չէ եղած ծանր տագնապ մը կամ լուրջ տակնուվրայութիւն մը որուն մասնակցած չըլլան կամ որմէ օգտուիլ փորձած չըլլան Տաւրոսեան լեռներու Թիւրքմէնները։

Հազիւ Կեսարիա Օսմանեան երկիր եղած էր երբ անոնք օժան-

---

քաղաքն ալ 1545ին հիմնուած, և 1618 Փետր. 18ին Սուլթան Մուրատի հրովարտակով «բացառիկ եւ ինքնավար» դարձած՝ տարեկան 15.000 ղրշ.ի տուրքի մը վճարմամբ (տես նոյն, 30-32)։ Արտօնութիւնը հաւանաբար անոր համար տրուած է վասնզի Զէյթուն 1617ին գրեթէ բոլորովին դատարկացած էր, ինչպէս Սիմէոն Լեհացի կը հաստատէ իբր ականատես վկայ ըսելով թէ «Զէյթուն՝ վեց եկեղեցի եւ վանք մի եւ ասին թէ ԸՃ (=800) հայի տուն կայր, **այժմ երեսուն տուն, զի ցիրուցան եւ հալածեալք են եղեալ ի Ճելալեացն»** ՀԱ. 1935, 90)։

(1) Գայսէրիէի փաշայութեան մասն էր տակաւին 1806ին Հաճըն որ անոր ենթակայ Կիւսթէրէի Գաւառին (=թեմ) գլխաւոր քաղաքն էր (Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, Ա. մաս, Ա. հտ. 318)։



զակները եղան ձէմի, երբեմնի Գարամանի իշխանազուն կուսակալին, երբ սա Մուհամմէտ Գարամանի եպարքոսին խորհուրդով փորձեց գահը յափշտակել իր եղբօրմէն՝ Պայազիտ Բ.էն (1481–1512) (Jonquière Ա. 129) և ձախողած ապաստանեցաւ Եգիպտոսի Մեմլուք վեհապետին՝ Գաթիպայի (նոյն 130) որ առիթէն օգուտ քաղելով Կիլիկիոյ Րամազան իշխանին հպատակ Թիւրքմէն ցեղերէն Իւչօք տոհմը իրեն հպատակեցուց և այսպէս Օսմ. պետութիւնը պատերազմի գրգռեց (1485)։ Գարամանի կուսակալ Գարակէօզ փաշա, անցաւ Տաւրոսեան կիրճերը և յառաջացաւ դէպի դաշտային Կիլիկիա։ Սակայն ստիպուեցաւ տեղի տալ անակնկալ յարձակմանը առջեւ Եգիպտացւոց Իւզպէք սպարապետին որ նորէն իր կողմը շահած էր Զիւլգատրեան Պուտագ իշխանը — որ պահ մը օսմանցիներու յարած էր — և յաջողած՝ գրգռել Գարաման օղլու Մուհամմէտը՝ Գասըմ բէկի թոռը, որպէսզի ոտք հանէ Գարամանը (Jonquière Ա. 138) և այսպէս տարածած էր իր ազդեցութիւնը Տաւրոսի հիւսիսակողմը և սպառնալիքի ենթարկած՝ Կեսարիան։

Պայազիտ Բ. իրարու ետեւէ բանակներ ղրկեց Գարամանը նուաճելու և Կիլիկիան գրաւելու համար, և փոփոխակի յաջողութիւններէ յետոյ վերջապէս վէզիր՝ Պէօյիւք Տաւուտ փաշա և Ռումելիի բանակին հրամանատար Խատիմ Ալի փաշա յաջողեցան Գարաման օղլուներու ապստամբութիւնը զսպել և խստութեամբ պատժել Վարշաք և Տորղուտ ցեղերը (1487)։ Օսմանեան բանակներու զօրութեան առջեւ սարսափահար լեռնային Կիլիկիոյ բերդատէրերէն ոմանք փախուստ տուին և ոմանք ինքնաբերաբար հնազանդեցան Թուրքերուն և իրենց բերդերը յանձնեցին։ Օսմանեան բանակները գրաւեցին Կիլիկիան և առաջացան նոյնիսկ մինչև Հալէպ, որուն տիրող Զիւլգատրեան Պուտագ իշխանը տապալեցին և անոր տեղ դրին անոր եղբայրը Ալա իւտտէօվլէթը, որ քիչ յետոյ ինքն ալ յարեցաւ Եգիպտացւոց երբ անոնց Իւզպէք սպարապետը դարձեալ յաջողեցաւ Կիլիկիան վերագրաւել և Զիւլգատրեան ուժերու օգնութեամբ անցնելով Տաւրոսը եկաւ պաշարել Կեսարիան (1491ին) առանց սակայն գրաւել յաջողելու, վասնզի Օսմ. Սպարապետը Հերսէկ Ահմէտ փաշա վրայ հասաւ և Եգիպտացիները վանեց։

Պայազիտ Բ. որ անձամբ Եգիպտոսի Սուլթանին դէմ երթալու պատրաստուելու վրայ էր Թունուզի պէյին միջնորդութեամբ հաշտութիւն կնքեց Եգիպտոսի Սուլթանին հետ հին սահմաններով, այսինքն Կեսարիան՝ Թուրքերու և Կիլիկիան՝ Եգիպտացւոց մնալու պայմանով (Այվազովսքի Ա. 262-265), որով Թիւրքմէնները մնացին երկու պետութիւններու սահմանին վրայ, և Օսմ. պետութեան գոյութիւնը իրենց համար սպառնալիք մը նկատելով, ապստամբեցան և հետզհետէ աւելի բռնանալ սկսան Ասիոյ մէջ կուսակալութեան կոչուած արքայորդիներու վրայ, այնպէս որ Պայազիտ Բ. որ այնքան յաջողութեամբ մաքառած էր Վենետիկի հետ և կը պատրաստուէր դիմակալելու Հունգար, Ֆրանսական և Սպանական միացեալ ուժերուն դէմ, ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել (1500ին) (Այվազովսքի, Ա. 274-5), և զանոնք հազիւ իրենց լեռներուն մէջ յաջողեցաւ սահմանափակուած պահել։

Կեսարիա, սակայն զերծ չմնաց տագնապէ, վասնզի 1507ին հոն

մտան Պարսիկ բանակները Շահ Իսմայիլի, Զիւլգատրեանց Թիւրքմէն իշխանութեան պատճառով։ Այս Թիւրքմէն իշխանութիւնը որ կը գտնուէր երեք իսլամ մրցակից մեծ պետութեանց, Եգիպտականին, Օսմանեանին և Պարսկականին միջև, երբեմն մէկուն և երբեմն միւսին միանալով բաւական ընդարձակ իշխանութիւն մը դարձած էր, Եփրատէն մինչեւ Միջերկրական տարածուելով։

Զիւլգատրեան իշխանութիւնը մասնաւորապէս օգտուելով Եաղուպի մահէն յետոյ Պարսկաստանի մատնուած անիշխանութենէն, գրաւումներ ըրած էր Պարսիկ հողէն։

Շահ Իսմայիլ 1499ին երբ կը վանէ Մուրատ խանը —Եաղուպի որդին որ կը տիրէր Իրաքի (Պաղտատ, Սպահան, Եզտ և Շիրազ)— իր գրաւած երկիրներէն և միահեծան տէր կը դառնայ Պարսկաստանի (Յ. Յակոբեան Ուղեգրութիւն, Ա. 277), Զիւլգատրեանց կողմէ գրաւուած Խարբերդը, Ուրֆան, Մերտինը, Հասան Քէյֆը և այլ տեղերը վերագրաւելու համար 1507ին, 70,000 զինուորներով Երզնկա կու գայ և հոն կանգ առնելով դեսպաններ կը ղրկէ Օսմ. և Եգիպտոսի Սուլթաններուն, ապահովելու համար զանոնք թէ իրենց դէմ թշնամական դիտում չունի և իր նպատակը միայն Զիւլգատրեան Ալայիւտտէօվլէթը պատժել է (Նոյն 279, 286–7)։ Այս ապահովութիւնը տալէ յետոյ Երզնկայէն ճամբայ ելլելով փոխանակ ուղղակի Խարբերդ՝ Ալայիւտտէօվլէթի երկիրը մտնելու գնաց Չմշկածագ և ապա Եփրատը անցնելով մտաւ հոն (տես Նոյն, 287) կամ ըստ ուրիշ տեղեկութեան մը (տես Նոյն, 280) անիկա ուղղակի մտաւ Օսմ. երկրին մաս կազմող Կեսարիան և «հոն հայթայթեց իրեն համար պարէն, վճարելով ամէն բանի համար եւ յայտարարելով ամէն կողմ, որ ամէն ոք կարող է պարէն բերել բանակին վաճառելու համար, եւ եթէ ոեւէ մէկը մի բան առնէ անվճար, մահուան պիտի դատապարտուի: Այս քաղաքը մնաց չորս օր եւ ապա առաջացաւ դէպի Ալպիստան, զետեղուած մի գետի(1) վրայ եւ գեղեցիկ դաշտի մը մէջ որ կը պատկանէր Ալիտոլիին(2): Ասկէ Մարաշ երկու օրուան ճամբայ է եւ Ալպիստանի երկիրը այցելելէ յետոյ առաջացաւ Մարաշ: Բայց Ալիտոլին անհետացեր եւ քաշուեր էր լեռներու ամրոցները: Լեռները կը կոչուին Գարատաղ եւ միայն դժուար անցք մը ունին»: (Ճիովան Մարիա Անճիոլելլօ, տես Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 279–280)։

Իսմայիլ աւերեց և կողոպտեց երկիրը և կոտորեց բազմաթիւ զինուորներ, որոնք երբեմն երբեմն լեռներէն կ'իջնէին յարձակելու համար Շահ Իսմայիլի զօրքերուն վրայ, բայց անոնք երեւան կը հանուէին անոր պահակներէն և երկրին բնակչութենէն։

Շահ Իսմայիլ 1507 Յուլիս-Նոյեմ. անձամբ մաքառելէ յետոյ պատերազմին շարունակութիւնը իր քեռայրին՝ Կուստագիւլու Մահմուտ պէյին ձգելով (Նոյն, 281–292) դարձաւ Պարսկաստան։

Քիչ յետոյ Շահ Իսմայիլ և Ալայիւտտէվլէթ հաշտութիւն կը կնքեն և Զիւլգատրեան տունը կը ճանչնայ Պարսկաստանի գերիշխանութիւնը։

---

(1) Ճիհան։

(2) Վենետիկցի ճանապարհորդը երբեմն Alidoli և երբեմն Abnadulat կ'ուղղագրէ Ալաիւտտէօվլէթ անունը (տես Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, 279 եւայլ)։



Սակայն հազիւ թէ Տաւրոսի շուրջը առերեւոյթ խաղաղութիւն մը հաստատուած էր երբ դարձեալ Թիւրքմէնները խլրտեցան, զօրավիգն դառնալով Գորգուտ արքայազունին, երբ անիկա Գարամանի կուսակալ կարգուած արքայորդիին՝ Շէհինշահի մահէն յետոյ իր իրաւունքին՝ Սէլիմի կողմէ յափշտակուիլը տեսնելով, ապստամբեցաւ Փոքր Ասիոյ մէջ։ Անոր բանակին հրամանատարը նոյնիսկ Թիւրքմէն մըն էր, Գարապըյըգ օղլու Շահգուլի (=ծառայ Շահին), մոլեռանդ աւազակապետ մը, որ Թուրքերը Շէյտան Գուլու (Սատանի ծառայ) կը կոչէին։ Ասիկա յաջողեցաւ ոչնչացնել Անատոլուի Պէյլէրպէյիին բանակը (Jonquiére Ա. 136 և Այվազովսքի Ա. 252) և գերի բռնեց հրամանատար Գարակէօզ փաշան որ ցցահար սպանեց (Այվազովսքի, Նոյն)։

Ալի փաշա վէզիրը Ասիա անցաւ այս յելուզակները մինչև Պարսկաստան վանելու մտադրութեամբ, և յաջողեցաւ զանոնք պաշարել ձորի մը մէջ։ Սակայն Շէյտան Գուլուն իր ճամբան փակող զօրքերը ջարդելով դուրս կը խոյանայ ձորէն։ Ալի փաշա զայն կը հետապնդէ և կը պարտաւորէ Կեսարիոյ մօտ Սարմըսագլըի մէջ, ճակատիլ իրեն հետ փոքրաթիւ զօրքով։ Ճակատամարտին մէջ թէ՛ Ալի փաշան և թէ՛ աւազակապետը վիրաւորուելով կը մեռնին և անգլուխ մնացած զօրքերը կը ցրուին (1511), առանց որոշ յաղթանակի (Այվազովսքի, Ա. 284)։ Շէյթան Գուլուի զօրքերը ճամբուն վրայ ամէն կարելի չարիք գործադրելով մինչև Պարսկաստան կը փախչին (Jonquière Ա. 130)։

Ահեղ և անգութ Սուլթան Սէլիմ Ա. (1512–152[illegible]) երբ գահ բարձրացաւ, ինչպէս բոլոր իր ընտանիքին անդամները նոյնպէս Գորգուտը սպանեց, զայն ձեռք անցնելով։ Իր արհաւիրալից իշխանութեան ատեն, երբ ահարկու Սուլթանը դէպի Պարսկաստան և դէպի Սուրիա և Եգիպտոս յաղթական պատերազմներով իր երկիրը կ'ընդարձակէր Տաւրոսի լեռնականները բնաւ չխլրտեցան և իրենց լեռներուն մէջ ամփոփուած մնացին։ Նոյնիսկ երբ տեսան իրենց պաշտպանին՝ Եգիպտոսի Սուլթանին պարտութիւնը և Սուրիայէն վանուիլը, ստիպուեցան գոնէ առ երեսս հպատակութիւն յայտնել Օսմ. Սուլթանին և ենթարկուիլ փաշաներու իշխանութեան, միշտ իրենց սեփական հողերուն վրայ մնալով և իրենց հպատակութիւնը միայն հարկատուութեամբ յայտնելով։

Սուլթան Սէլիմ նոյնիսկ կը յաջողի վերջ տալ իր ժամանակին Թիւրքմէն իշխանութիւններէն զօրաւորագոյնին՝ Զիւլգատրեան տան, որուն Ալայիւտտէվլէթ իշխանը հաւատարիմ իր դաշինքին մերժած էր օգնել Սուլթան Սէլիմ Ա.ի երբ ան 1514ին Պարսկաստան կ'արշաւէր և մինչև Ուրմիոյ լիճը կ'առաջանար։ Ասիկա յարմար առիթ մը կ'ըլլար Սէլիմի համար որ անոր դէմ կը ղրկէր 1515ին Սինան փաշա վէզիրը և Ալի պէյ Շէհսիւվար Օղլուն 10,000 Եէնիչէրիներով։ Ալայիւտտէվլէթ պատերազմի մէջ կ'սպանուի և իր չորս զաւակները գերի կ'իյնան։ Անգութ Սէլիմ Ա. անոնց գլուխները կը ղրկէ Զիւլգատրեանց պաշտպան և գերիշխան Եգիպտոսի Սուլթանին և երկիրը կու տայ Ալի պէյ Շէհսիւվարին։

Այս յաղթութիւններէն յետոյ Սուլթան Սէլիմ Ա. զօրքը կ'արձակէ Կեսարիոյ մէջ անոնց դրամական նուէրներ ընելով (Այվազովսքի, Ա. 313) յաջորդ տարուան յետաձգելով Եգիպտոսի Սուլթանն ալ պատժելու գործը։

Արդարև յաջորդ տարին կը ձեռնարկէ այս կարեւոր արշաւանքին։ Իր բանակին համախմբման վայրը կ'ըլլայ Կեսարիա ուր 1516ին նախ կուգայ վէզիր Սինան փաշա, 40,000 զօրքով (Նոյն, 321)։ Գլխաւոր ճակատամարտը տեղի կ'ունենայ Հալէպի մօտ Տապըգի դաշտին վրայ, ուր Եգիպտացիք կը պարտուին և ութսունամեայ Գանսու Ղաւրի Սուլթանը փախած ատեն ձիէն իյնալով կամ իրեններէն սպաննուելով կը մեռնի (Նոյն, 323)։ Այս յաղթութենէն յետոյ Սելիմի առջև կը բացուի Սուրիան և Պաղեստինը, որոնց տիրապետութենէն յետոյ կ'անցնի Եգիպտոս և զայն եւս կը նուաճէ։

Սելիմ Ա.ի մահէն (1520) յետոյ երբ Սուրիոյ կուսակալը Ճանպէրտի Ղազալի ապստամբեցաւ՝ ուրիշ կուսակալներու աջակցութեամբ, դարձեալ Թիւրքմէնները խլրտեցան և անոր միացան (Այվազովսկի, Ա. 351)։ Սուլթան Սիւլէյման Ա.ի (1520–1566) կողմէ ղրկուած Ֆէրհատ փաշա այս ապստամբութիւնը ընկճելէ յետոյ իր զօրքով քաշուեցաւ Կեսարիա և հոն սպասեց, վասնզի Սուլթանը կը կասկածէր թէ Պարսից Շահ Իսմայիլը իր Եւրոպայի կողմը զբաղած ըլլալէն օգտուելով պիտի յարձակէր Օսմ. երկիրներու վրայ (Նոյն, 352) մինչ Թիւրքմէնները կանխեցին զանոնք, վասնզի սաստիկ սրտմտած այն հարստահարութիւններէն որոնք կալուածահամարի մը պատրուակով Թուրք պաշտօնատարներ կը գործադրէին, ապստամբեցան (Jonquière Ա. 155. Այվազովսկի, Ա. 373. Ազգապատում, 2225) և Փոքր Ասիան այնպիսի վիճակի մը մատնեցին որ վեհապետին ներկայութիւնը անհրաժեշտ դարձաւ։ Իրարու ետեւէ յաջորդաբար ղրկուած բանակները յաղթուեցան և անոնց զօրավարները սպաննուեցան, և մեծ դժուարութեամբ վերջապէս կարելի եղաւ խաղաղեցնել երկիրը 1526ին, աւելի իմաստուն և խոհական միջոցներու կիրարկութեամբ քան թէ զինու զօրութեամբ (Jonquière, Ա. 156. Այվազովսկի Ա. 373. Ազգապատում, 2225)։ Սակայն հազիւ այս ապստամբութիւնը զսպուած՝ Տաւրոսի հարաւակողմը, նոր սոսկալի խառնակութիւն մը պայթեցաւ 1527ին լեռնաշղթային հիւսիսակողմը՝ Գարամանի մէջ (Jonquière, 156) և տարածուեցաւ պետութեան զանազան կողմերը և մեծ համեմատութիւններ առաւ։

Այս նոր շարժումը իր մէջ կը պարունակէր կրօնական և ընկերային յեղաշրջումի մը հիմերը և ընկերվարական սկզբունքներու վրայ հիմնուած վարդապետութիւններով բռնկցուցած էր ապստամբութիւնը։

Չէլէպի Սուլթան Մէհէմմէտ Ա. (1413–1421) իշխանութեան շրջանին, Օսմ. պետութիւնը վեր ի վայր ընող զանազան ըմբոստութեանց կարգին նշանաւոր էր մէկը որ յարոյց նախկին Գազասկէր Պէտրէտտին անուն Շէյխը, որ բազմաթիւ Տէրվիշներու գլուխն անցած՝ քաղաքէ քաղաք պտտելով՝ ինքզինքը իբրև Մէհտի (= Մարգարէ) կը ներկայացնէր, և գրեթէ ընկերվարական սկզբունքներ կը քարոզէր։ Անիկա անհագին թիւով հետեւողներ ունեցաւ իրեն և կրօնական դիմակի տակ մեծ յեղափոխութիւն մը հանեց։ Չէլէպի Սուլթան Մէհէմմէտ հազիւ կրցաւ զսպել այս ըմբոստութիւնը։ Պէտրէտտին գերի բռնուելով Սէրէզի մէջ գլխատուեցաւ և նորադաւաններէն շատերը սպաննուեցան և մէկ մասն ալ ցիրուցան եղան, սակայն Պէտրէտտինի վարդապետութիւնները կ'ապրէին դեռ, և գաղտնի կը քարոզուէին կարգ մը Տէրվիշներու կողմէ (Jonquière, Ա. 156)։



Գալէնտէր-Օղլու, Մեծ Շէյխ Հաճի Պէկթաշիի— որուն գերեզմանը կը գտնուի Կեսարիոյ մօտերը— սերունդէն մէկը, որ հետեւող մըն էր այս աղանդին, առանց զարհուրելու անյաջողութենէն և մահուամբ պատժուելէն իր նախորդին, դարձեալ ապստամբութեան դրօշ բարձրացուց յաղթանակել տալու համար ընկերվարական գաղափարները զորս Պէտրէտտին կը քարոզէր (Նոյն)։

Տէրվիշներու, Ապտալներու և Գալէնտէրներու քարոզութիւնները ոտք հանեցին բնակչութիւնը և շուտով Գալէնտէր Օղլու գլուխը անցաւ խառնիճաղանճ բազմութեան մը որ իր թիւով ինքզինքը կը հարկադրէր (Jonquière, Ա. 156)։

Անատոլուի Պէյլէրպէյին, Պէհրամ փաշա, որուն կ'օգնէին նաև Գարամանի և Հալէպի կուսակալները իրենց գունդերով, կատարելապէս պարտուեցաւ Թօգատի մէջ (Նոյն)։

Բովանդակ Փոքր Ասիան շփոթի և խառնակութեան մատնուեցաւ և ըմբոստները Օսմ. բանակի դէմ կռիւներ մղելով յաճախ յաղթեցին քան յաղթուեցան (Այվազովսկի, Ա. էջ 373)։

Այս ապստամբութիւնը որ այնքան մեծ ծաւալ գտած էր կ'սպառնար ուղղակի Սուլթանական գահուն և պետութեան գոյութեանը։ Պէտք էր գործել արագօրէն և խստութեամբ ժամանակ չտալու համար որ ապստամբները տարածեն ժողովրդային զանգուածին մէջ իրենց վարդապետութիւնները՝ այնքան հրապուրիչ բոլոր կեանքի դժբախտութեանց ենթակայ ընչազուրկներուն և անոր հաճոյքներէն անժառանգներուն և զրկեալներուն համար։

Այս ապստամբութեան մէջ ալ լեռնային Կիլիկիոյ Թիւրքմէնները դարձեալ կարեւոր դեր մը կատարեցին, վասնզի մեծ թիւով մտան Գալէնտէր-Օղլուի բանակին մէջ։ Մեծ վէզիր Իպրահիմ փաշա, որ գըլուխը անցնելով Եէնիչէրիներու և Սիպահիներու անոնց դէմ գացած էր, ճարպիկ բանակցութիւններով և խոստումներով իր կողմը շահեցաւ այս Թիւրքմէնները և ապա կողմնակի ու պզտիկ կռիւներով ապստամբները ուժասպառ ըրաւ և յաջողեցաւ ի վերջոյ յաղթել և սպաննել Գալէնտէր-Օղլուն և իր գլխաւոր աջակիցը Վելի-Տունտալը և խաղաղեցնել բոլոր երկիրը (Jonquère, Ա. 156. Այվազովսկի Ա. 373–5)։

Սակայն խռովութիւնները իրարու կը յաջորդէին և Սիւլէյմանի ցոյց տուած կորովը պատժելու համար թէ՛ ապստամբները և թէ՛ այս ապստամբութեանց գլխաւոր պատճառ իր կեղեքիչ պաշտօնատարները, անզօր կը մնային պետութիւնը փրկելէ ներքին անկարգութիւններու, պետական անկազմակերպութեան և վարչական անմիօրինակութեան հետեւանքներէն։ Անարդարութիւնը և անգթութիւնը պետութեան մէկ ծայրէն միւսը կ'իշխէր և Սիւլէյման Գանունի այս բարբարոսութեանց հանդիսավայր երկրին մէջ՝ իբր արդարութիւն բաշխող, շատ հեռու էր անստուեր ըլլալէ։

Անիկա գործիք՝ անյայտ ծագումով կնոջ մը՝ Քուրէմ Սուլթանուհիին, որուն համար ոմանք Ֆրանսացի և այլք Ռուս է կ'ըսեն, ամէնէն անարդար և ամէնէն անգութ արարքները գործեց և նոյնիսկ սպաննեց իր զաւակներէն ամէնէն արժանաւորը՝ Մուսթաֆան (21 Սեպտ. 1553) և գլխատեց քանի մը կարող վէզիրներ (Jonquière Ա. 187–191)։

Իր շուրջը գործադրուած խարդաւանանքներ ու նենգութիւններ, ինչպէս զինքն նոյնպէս նաև երկիրը, դժբախտ ըրին։

Այս տեսակ նենգութեան մը արգասիքն էր այն հրամանը որ Սիւլէյման արձակեց իր Պայազիտ անուն որդիին, ձգելու համար Գարամանի կուսակալութիւնը։ Պայազիտ մերժեց և ապստամբեցաւ իր հօրը դէմ, իրեն աջակից ունենալով դարձեալ Տաւրոսեան լեռներու բնակիչ Թիւրքմէնները, ինչպէս նաև Քիւրտերը և Ասորիները, որոնցմէ բաղկացեալ իր բանակը 20.000ի կը հասնէր։

Այս ապստամբութիւնը զսպեց Սօգոլլու Մէհէմմէտ փաշա վէզիրը, որ Գոնիայի մէջ ջախջախեց Պայազիտ իշխանին բանակը (30 Մայիս 1559)։

Թիւրքմէնները՝ այսպէս անգամ մըն ալ Գառամանը — որուն մաս կը կազմէր Կեսարիան — յուզումի մատնելէ յետոյ, դարձեալ իրենց անառիկ լեռները ապաստանած, պահեցին իրենց գոյութիւնը, սպասելով նոր առիթներու, որպէսզի իբր մշտապատրաստ ոյժ մը անկարգութիւններ յարուցանէին և աւազակային և ասպատակային ձեռնարկներու բերէին իրենց աջակցութիւնը, անշուշտ աւարին համար։ Եւ դժբախտաբար Օսմ. պետութեան կեանքին մէջ այդ տեսակ առիթներ միշտ կային։ Մօտաւորապէս քսան տարիներ իրենց լեռներուն մէջ սահմանափակուելէ յետոյ, անոնք դարձեալ ասպարէզ եկան և բոլոր Անատոլուն աւարի, աւերի և համատարած խառնակութեան մը մատնող մեծ ու երկարատև շփոթութեան մը բերին իրենց մասնակցութիւնը և պատեհութենէն օգտուեցան իրենց բնածին աւազակային գործունէութեան սահմանները տարածելու համար։

Այս առիթը ընծայեց, Թուրք և Պարսիկ 1575–1585 տասնամեայ պատերազմէն յետոյ ծագած մեծ խռովութիւնը, որուն հետեւանօք Հայաստան, Միջագետք և բովանդակ Փոքր Ասիա ասպատակութեանց և յուղկահարութեանց ենթարկուեցաւ Հայ ժամանակակից պատմիչներէ Ճէլալի(1) կոչուած աւազակներէն, որոնք մեծ մասամբ ապըստամբ Թուրք կուսակալներ էին (1590–1608) և անլուր խժդժութիւններ գործեցին, ասպատակութիւններով, կողոպուտներով և աւերածութեամբ։

Առաքել Դաւրիժեցի և Գրիգոր Դարանաղցի, որոնք ժամանակակից են այս խռովութիւններուն և երկարօրէն զանոնք նկարագրած, այս խառնակութեան պատասխանատու կը համարեն Սուլթան Մէհէմմէտ Գ.ը (1595–1603) «զի ոչ կարէր վարել թագաւորութիւն»:

Եւ շատ հետաքրքրական պատկերը կը գծեն Թրքական ժամանակին վարչութեան ըսելով թէ «ծառայք եւ պարոնայքն ամենեքեան ապըստամբեցան ու երես դարձուցին ի նմանէ, քանզի ինքն միայն ոչ էր իշխանաւոր յորժամ որ տայր քաղաք մի փաշայի մի, կամ պարոնի մի, յետ Ժ. աւուր կամ Ի. աւուր մայրն կամ քոյրն, կամ իւր կինն, կամ վէզիրն, տային այլ փաշայի եւ առնէին բազում կարմիր դահեկան» (Դաւրիժեցի, 568) և իբր օրինակ այս խաղքութեան կ'ըսէ թէ Տիարպէքիրը «ի վեց ամիսն՝ ինն փաշայի եսուն» (Նոյն, 569) (Հմմտ. Նաև Դարանաղցի 14–15)։ Այս պայմաններուն մէջ կողոպուտը անխուսափելի էր, վասնզի փաշաները յաճախ կաշառքով կ'առնէին կուսակալութիւնները և երբեմն իրենք նոյնիսկ չէին երթար իրենց պաշտօնատեղին։ «Կայր որ փաշայն կու գայր, կայր որ փաշի վաքիլն կու գայր. Նոքա որ կու գային, գիտէին որ բանի յետքն փուչ էր, Նոքա այլ կու սկսանէին ի կողոպտել եւ ի քալանել զքաղաքն եւ զերկիրն» (Դաւրիժեցի, 569)։ Սուլթանը չունէր «փոյթ եւ հոգ վասն աշխարհի շինութեան: Այնչափին յիմարեալ էր եւ արբեալ եւ թմրեալ էր յիմարական զինեաւն, որ ոչ զիւր հողն գիտէր եւ ոչ զաշխարհի վտանգն...: Գրեթէ ոչ գոյր թագաւոր եւ արքայ եւ գլխապետ եւ հոգաբարձու աշխարհաց, բայց միայն ժանտ անուն էր ի վերայ երկրի տէրութեան իւրոյ: Բարձեր էր իրաւունք դատաստանաց եւ քննութիւն եւ դատ առնել զրկելոց (Դարանաղցի, 13–14)։ Հետեւաբար դժգոհութիւնը ընդհանուր էր և այս պատճառով հրդեհը որ ծայր տուած էր Հայաստանէն տարածուեցաւ Ասիական բոլոր գաւառներուն մէջ Պրուսայէն մինչև Պաղտատ, Տրապիզոնէն մինչև Դամասկոս։ Ըմբոստութիւններ ըմբոստութիւններու կը յաջորդէին, և հազիւ մէկը զսպուած ուրիշ մը աւելի ծանր ծնունդ կ'առնէր։ Ասոնք աւազակային հեղեղներ էին, որոնք իրենց քաջագործութեանց ասպարէզ ընտրած էին մասնաւորապէս Կիլիկիայէն մինչև Արարատ տարածուող երկիրները։ Այս գիշատիչ տարրերը, փաշաներու և կուսակալներու օժանդակութեամբ — որոնց ձեռքին տակ զինուորական ոյժեր կային կեդրոնացած — միանական ապստամբութիւն մը չէր որ կը յարուցանէին, այլ անիշխանական վիճակէն և կեդրոնին տկարութենէն կ'օգտուէին։ «Ոչ թէ ի միատեղ էին, այլ յատուկ յատուկ շրջէին եւ աւար հարկանէին, սպանանէին եւ հրձիգ առնէին, զմանկունս եւ զկանայս խայտառակէին: Ոչ թէ քրիստոնէից միայն առնէին, մանաւանդ տաճկաց առաւել անողորմաբար գործէին զամենայն չարիս» (Դարանաղցի, 143)։

Գաղափար մը տալու համար թէ անոնք ինչ մեծ չարիք և ինչ մեծ աւեր պատճառեցին, կը բաւէ ըսել թէ ըստ ականատեսներու վկայութեան «ի յԱմթայ (=Տիարպէքիր) կէս աւուր հողէն որ ելնես, մինչ ի մեծ քաղաքն Ստամբոլ աւերութիւն է, ուր ուրեք գտանի շինութիւն» (Դաւրիժեցի, 569. Հմմտ. Նաև Գր. Դարանաղցի, 15)։

Այս մեծ ու սոսկալի խռովութիւններուն որոնք բոլոր երկիրը տակն ու վրայ ըրին, անհաղորդ չմնաց նաև Կեսարիա և Արգէոսի շրջակայքը, որուն այնքան մօտ էր արդէն Տաւրոսեան լեռնաշղթան, իր ապստամբութեանց մշտնջենական օրօրան կիրճերով և մանաւանդ հոն որջացած Թիւրքմէններով, որոնք այս խռովայոյզ շրջանին կատարեցին իրենց վերապահուած դերը, գործակցելով այս ապըստամբներէն և աւազակապետներէն շատերուն։

Այս ըմբոստական շարժմանց ամէնէն ծանրը եղաւ այն որ Գարա Եազըճը Ապտիւլ Հալիմ և իր եղբայրը Տէլի Հասան յարուցին։

Ասոնք պահ մը յաջողեցան կորզել Սուլթանէն Ասիական բոլոր

(1) Այս ապստամբութեան առաջին ազդանշանը տուած էր Քիւրտ Ճէլալի ցեղին պատկանող Թօփալ Օսման փաշա, ուստի բոլոր ժամանակակից աւազակները, որոնք ո՛չ միայն Արարատեան անտէր երկրին այլ և Օսմանեան պետութեան ամէն մասերուն վրայ երեւան եկան, Ճէլալի կոչուեցան։ Սակայն դիտելի է որ ժամանակով հազիւ 60–70 տարի առաջ, 1517ին Թօգատի կողմերը ծագած է ապստամբութիւն մը կրօնական բնոյթով, Ճէլալի անուն աղանդաւորի մը կողմէ որ անձաւի մը մէջ ամրացեալ իր արբանեակներով, կ'ըսէր թէ կ'սպասէր Մահտիին և աշխարհի կատարածը մօտ էր (Այվազովսքի, Ա. 340)։ Այս աղանդին հետեւողներն ալ Ճէլալի կը կոչուէին, ուստի կրնայ ըլլալ որ բոլոր Փոքր Ասիան շփոթի մատնողները, իբր ասոր յաջորդները Ճէլալի կոչուած ըլլան։

նահանգները։ Օսմ. կառավարութիւնը Մաճառաց դէմ պատերազմի տանելու համար Հայաստանի Քիւրտերէն և Կիլիկիոյ Թիւրքմէններէն վարձկան զօրք առած էր, ըստ Այվազովսքիի 20.000 հոգի (Ա. 550)։

Քէրէշթէսի ճակատամարտին (26 Հոկտ. 1596) մէջ երբ օսմ. բանակը ցիրուցան եղաւ (Գր. Մարգարեան, Օսմ. Պատմ. 1912, էջ 92–93) այս վարձկան գունդերը փախստական եղան։ Մեծ-վէզիրը Ճղալի-Զատէ Սինան փաշա այդ վարձկան գունդերը կ'անպատուէ ֆիրարի (=փախստական) անունով և զանոնք ի պատիժ կը ղրկէ Ասիա (Jonquière. Ա. էջ 224)։

Ենիչէրիներու Սէկպան(1) գունդին գնդապետներէն Գարա Եազըճի(2) այդ Ֆիրարիներուն գլուխը անցաւ և ապստամբեցաւ 1597ին(3)։ Գարա Եազըճի ինքզինքը հին Beni-Cheddat ընտանիքէն սերած կը համարէր և զրոյց հանած էր թէ Մարգարէն իրեն երեւցած էր և իրեն խոստացած՝ Փոքր Ասիոյ վեհապետութիւնը (Jonquière. Ա. 224)։

Սակայն Դաւրիժեցի (569) կ'ըսէ թէ «ոչ մի թագաւորական տոհմէ էր եւ ոչ ի մեծ ազգէ, այլ գռեհիկ եւ ոչինչ քան զամենայն մարդիկ», Զօռում գիւղաքաղաքէն սոսկական մըն է (Դաւրիժեցի, 569) «աշխարհաւ Կապադովկիոյ» (Նոյն, 632)։ Ասիկա «սուխթայ(4) գոլով ... ժամանակս ինչ եկաց ի յՈւրհայ առ Մօլլայ մի ուսման աղագաւ եւ յետոյ եղեւ Թֆանքչի(5) եւ եկած զինուորութեամբ ի սպասաւորութիւն այլոց իշխանաց, յաղթող ի պատերազմունս» (Դաւրիժեցի, 632)։

Երբ ապստամբութեան դրօշը բարձրացուց շուտով «ժողովեաց զընկերս՝ ապստամբեալ ի թագաւորէն, բազմացոյց զզօրս իւր, մինչ զի ասէին թէ, զերեսուն եւ զվեց հազարապետս ունէր, որ բոլուկպաշի կոչէին եւ ասէին թէ յամենայն աւուր զայսչափ ծախս ունէր, այս է ի մի օրն, զերեսուն մոթ զարի տայր երիվարացն, եւ այս Միջագետաց մոթն է, որ ամէն մոթ՝ երկու հարուր քան եւ չորս լիտրին զայ Հոռոմանց լտրովն, եւ չորս հարիւր լիտր հաց, հարիւր եւ տասն ոչխար, Լե. լիտր բրինձ, տասն լիտր իւղ, եւ Ճ. ղուրուշ ռոճիկ, զի օրն Ռ. ղուրուշ ծախս ունի ասէին» (Դաւրիժեցի, 632–633)։ Իր զօրքը կը բաղկանար 20.000 Քիւրտերէ և Թիւրքմէններէ (Այվազովսքի Ա. 550)։ Թէև ուրիշներ «անթիւ» (Դարանաղցի, 24) նշանակած ըլլան, չափազանցութեամբ, սակայն 20,000ն ալ անոր ապստամբութեան կարեւորութեան և տարողութեան մասին գաղափար մը կու տայ։

Ապստամբը «ապականեաց զբազում գաւառս» (Դարանաղցի, 24)։ Ի մէջ այլոց հարուածեց Գարամանի Միրքէսէլիմը (Jonquière Ա. 224) և գրաւեց Եդեսիան (Նոյն) 1599 Հոկտեմբեր 9ին Դշ. օրը (Դաւրիժեցի, 632), և հոն ամրացաւ (Դարանաղցի, 24 և Դաւրիժեցի. 86 և 632)։

Երեք տարի, բազմաթիւ փորձեր եղան այս ապստամբը ընկճելու համար, սակայն չյաջողեցան (տես Դաւրիժեցի, 570, 630, 86, 569) և

(1) Որսորդ գունդ։

(2) Դարանաղցի «Ազիճի» անունով կը ճանչնայ և Դաւրիժեցի «Ղարայ Եազիչի» անունով։

(3) Այս թուականը կու տայ Դարանաղցին (էջ 24)։ Դաւրիժեցի մէկ տարի ուշ կը դնէ (էջ 86)։

(4) Կարդա՛ Սօֆտա, կրօնական ուսմանց ուսանող։

(5) Հրացանակիր։



նոյնիսկ «Եազըճին ելեալ ի բերդէն՝ եւ այլեւս զօրս ժողովեաց եւ վերայ իւր, եւ նոքօք սկսաւ աւերել զաշխարհս եւ նաեւ զՈւրհոյ քաղաք եւ ապա զայլս՝ զԹօխաթ, զՍեբաստիա, զԹուրայ, զԱնկիւրիայ եւ այլ ուր եւ հանդիպեցաւ։ Եւ խարաջն (= գլխահարկ) զոր հանապազ թագաւորն առնոյր ի ժողովրդոց, այս Եազիչիս զերկու տարւոյ խարաջն ինք էառ եւ իւրոց զօրացն ռոճիկս բաժանեաց» (Դաւրիժեցի, 86. Հմմտ. Նաև Նոյն, 632–3)։ Թէև Կեսարիա չէ յիշուած անոր գրաւած քաղաքներուն մէջ, սակայն որոշ է թէ ան ալ պէտք է գրաւուած ըլլայ (Պատմ. Սեբաստ. 229)։

Այս մեծ ապստամբութիւնը որ մինչև մայրաքաղաքին դուռները ծաւալած էր հարկադրեց Սուլթանը դիմելու արտասովոր միջոցներու մանաւանդ որ «ժողովեցան զանգատաւորք եւ գնացին առ Սուլթան Մահմատն թէ երկիր եւ քաղաք ամենեքեան աւերեցան ի յոչինչ ումեքէ» (Դաւրիժեցի, 569), Ուստի կը ղրկէ Եդեսիոյ վրայ մեծ վէզիրը, երբ արդէն Գարա Եազըճի օրինակէն քաջալերուած Օսմ. պետութեան ասիական բոլոր գաւառներուն մէջ զանազան նոր ըմբոստութիւններ ալ ծագած էին և անիշխանութիւնը համատարած հանգամանք մը առած էր, վասնզի ուրիշ բազմաթիւ կուսակալներ, ցեղապետներ, տէրէպէյիներ, օգտուելով պետութեան տկարութենէն գլուխ վերցուցած և ընդհանուր կազմալուծում առաջ բերած էին, երկիրը մէկ ծայրէն միւսը մատնելով աւարառութեանց և կոտորածներու և աննկարագրելի անկարգութեանց, այսպէս «ի մերձակայից Կոստանդնուպօլսի՝ մինչեւ ցԵրեւան քաղաք, ի Բաղդատայ մինչեւ ցԴամուրղափուն, զՍպիտակ ծովու մէջն եւ զՍեւ ծովու մէջն. այս եզերս՝ զորս ծրագրեցի զսոցա մէջն զայսքան աշխարհս յաւեր եւ յապականութիւն՝ դարձուցին» (Դաւր. 87)։

Փոքր Ասիա, Հայաստանը և Սուրիա, ԺԶ. դարուն վերջերէն սկըսեալ ամբողջութեամբ ոտքի վրայ էին, և ամէն կողմ ապստամբները ինքնիշխան կը գործէին։

Գարա Եազըճիի պէս և անոր հետ, «ի գիւղօրէից քրտաց» «Քուրտ Մահմուտ»՝ կոչուած «Սարդար» (Դաւ. 86 և Դար. 33-34) 1595էն 1604, Դաւրէժի մէջ Ներքինի Ջաֆար փաշա 1598էն 1601 (Դաւ. 632 և Դար. 30-30), Երզնկայի շուրջ Քէօսէ Սաֆար և Զօրպապաշի Ղարաղաշ 1599էն 1603 (Դաւ. 86, 633-4. Դար. 41), Բաբերդի շրջանին մէջ Էքիզ փաշայի երկու եղբայրները (Դար. 41, 46, 47 և 147) և Գալէնտէր (Նոյն, 42-48) Կիւմիւշխանէի մէջ Իպրահիմ պէկ (Դար. 41-42), Կամախի մէջ՝ Շիրին պէկ (Դար. 143), և Քիւրտ Ղայթա Զախու օղլու, 1608էն 1615 (Դարան. 34-35), Սեբաստիոյ մէջ՝ կուսակալ Ահմէտ փաշա 1601է 1604 (Դաւ. 86 և 634 և Պատմ. Սեբաստ. 229), Խարբերդի և Բալուի մէջ՝ Թաւուլ և իր եղբայրը 1603էն 1608 (Դաւ. 86 և 636. Այվազովսքի Ա. 550. Դար. 143), Քիլիսի և Հալէպի շուրջը Ջանփոլատցի կամ Ջանփոլատ օղլու Ալի փաշա 1605էն 1608 (Դաւ. 635), Սուրիոյ մէջ Մա'անօղլու 1605էն 1635 (Դաւր. 86, 642. Դար. 266), ապստամբութիւններ յարուցած էին և անոնցմէ ոմանք մանաւանդ մեծ ծաւալ ստացած, ինչպէս, օրինակի համար Ջանփոլատ-օղլու Ալի փաշա որ մինչև Դամասկոս և Երուսաղէմ (Դար. 101-102) ասպատակած և սարսափ սփռած էր (Jonquière Ա. 236. Այվազովսքի Ա. 576)։

Այս շրջանին դէմքերէն մին էր նաև Քէօռ Օղլու ժողովրդական բազմաթիւ բանահիւսութեանց հերոսը, որուն հայդուկային քաջագործութիւնները մինչև հիմա կ'երգուին, երեք հարիւր տարիներէ

ի վեր և որ իր գործունէութեան շրջանին ալ արդէն դիւցազնավէպի նիւթ դարձած պիտի ըլլայ վասնզի Առաքել Դաւրիժեցի (86) կ'ըսէ թէ «այս այն Քոռօղլին է որ բազում խաղ ասացեալ՝ զոր այժմ աշուղներն եղանակեն»: Ասոր գործակիցն էր Քիւրդ Քզիր օղլու Մուստաֆա Բէկը որ 1591ին Տիվրիկի և Կամախի կողմերը ասպատակած է (Դարանաղցի, 32-33 և Դաւր. 86)։

Ասոնցմէ զատ կը յիշատակուին միայն անունով Դալուհասիպի, Խոլայ Սրդմազ կամ Օլասըխմազ (1604ին) (Դարանաղցի 46), Շէյթան Զաքուչին (= Սատանի մուրճ) (1604), Ինջաղան (1604) (Դաւր. 86 և 634) և Ցուլազարին (1605) (Նոյն), Թանգրի Թանիմազ (Աստուած չճանչցող), Գօկապախան Ջըխլախ, Քեասաքեաս, Քըլու, Ղարասահաթ, Աղաջտանփիր այլանդակ մականուններով յելուզակները, ամէնքն ալ այդ դժնդակ ժամանակներուն մէջ Փոքր Ասիան ասպատակող ճէլալիներուն գործակիցներ։

Ասոնք «ամենեքեան Ջալալիք էին որք ոչ հնազանդէին թագաւորին եւ ոչ ի տեղի ուրեք զկայ առեալ բնակէին, այլ աշխարհաւերք եւ աշխարհակործանք եւ ուր եւ լսէին զհամբաւ շինութեան, դիմեալ անդր հասանէին, աւարեալ կողոպտէին եւ զշինուածոն հրդեհեալ այրէին» (Դաւր. 87)։

Այս համատարած հրդեհէն զերծ չմնաց նաև Կապադովկիոյ պատմական մայրաքաղաքը Կեսարիա, խմորումներու և յանդգնութեանց այս կեդրոնավայր քաղաքը, վասնզի հոն ալ ծագեցաւ ապստամբութիւն մը 1599ին գլխաւորութեամբ Հիւսէյին փաշայի որ «կողոպտեաց զբազում տեղիս եւ եկեալ պաշարեաց զԿեսարիա եւ ի նոյն ամին (1599) գնացեալ յՈւրհա միաբանեցաւ ընդ Եազիչուն» (Դաւ. 633) որ բոլոր ապստամբներուն մէջ ամէնէն գլխաւորն էր և ամէնէն ահարկուն և ուժովը։

Մեծ վէզիրը, որ իր վրայ գացած էր եթէ ընկճէր զայն արդէն Փոքր Ասիոյ միւս մասերը նուաճել կը դիւրանար, ուստի ամէն ջանք ըրաւ անոր նստոցն՝ Ուրֆան գրաւելու սակայն չյաջողեցաւ վասնզի «յոր կողմն որ խրամահատէին ի դրսեւէն՝ նա 'ի ներքուստ արագ արագ ամրցընէր ի գիշերի» (Դար. 25)։ Ուստի մեծ վէզիրը դիմեց սիրաշահելու միջոցին և բանակցութեան մտաւ և որպէսզի պետութեան հեղինակութիւնը փրկէ պահանջեց Կեսարիոյ մէջ ապստամբող և ապա իր քովը ապաստանող Հիւսէյին փաշան յանձնել (Դար. 25 և Դաւրիժ. 86 և 633)։ «Նա չառաջինն ոչ կամեցաւ տալ, նա քաղաքացիքն եւ իւր զօրքն ամենեքեան միաբան աղաղակեցին թէ տուր զինչ նոքա խնդրեն, զի կու նեղիմք յերեւաց սովին. լաւ է մին մարդ կորնչել, քան մեք ամենեքեանքս»: Ասոր վրայ «յակամայ եւ ի հարկէ ետուր ի ձեռս նոցա, եւ նոքա կախեցին զպարսպէն եւ իջուցին առ նոսա: Եւ նոքա առեալ գնացին ի բաց եւ այլ ոչ կամեցան պատերազմիլ առ ժամանակ մի»։

Թէև մեր ժամանակագիրները կ'անգիտանան, արտաքին պատմիչները կը հաստատեն թէ Վէզիրը գործը անոյշ տեղը կապած էր, զինքն կարգելով Ամասիոյ կուսակալ և այսպէսով զայն հնազանդութեան բերած իբր թէ (Jonquière Ա. 224)։

Այս համաձայնութեան մէջ կ'երևայ թէ մեծ դեր կատարած է կաշառակերութիւնը, վասնզի Եազըճիի համար ըսուած է «ի ծածուկ կաշառօք կուրացուց զաչս Վէզիրին» (Դաւ. 734)։ Այս համաձայնութեան ուժով Գարա Եազըճին «տիրեաց Թօխաթոյ եւ Ամասիոյ եւ Մարզուանու՝ Զօռումու» (Դաւ. 634, հմմտ. Դարան. 25) և քիչ յետոյ վերստին զէնք ա-



ռաւ և միացաւ իր եղբօրը Պաղտատի կուսակալ Տէլի Հասանին հետ և կազմեց ընդարձակ պետութիւն մը որ Պաղտատէն մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը կը տարածուէր։

Կեսարիա այս շրջանակին մէջ էր և կը գտնուէր իշխանութեան տակ Գարա Եազըճիի որ օրէ օր աւելի կը զօրանար և թէ իր սահմանները և թէ իր անգթութիւնները կ'ընդարձակէր։ Անիկա կատարելապէս յաղթելէ յետոյ Հասան փաշա վէզիրին ինչպէս նաև Կեսարիոյ մէջ Հաճի Իպրահիմ վէզիրին (Դաւրիժ. 634) ինքզինքին սեփականեց Շահ (=թագաւոր) տիտղոսին հետ վեհապետական բոլոր իրաւունքները և ըսաւ իր հրովարտակներուն մէջ «Ես յաղթեցի այս երկիրներուն մէջ Օսմ. զօրութեան եւ տիրապետութիւնը ինծի կը պատկանի այսօր անվիճելի կերպով» (Jonquière, 224)։

1601ին անիկա կողոպտեց, այրեց և ջարդեց Սեբաստիան (Դաւ. 634. Դարան. 24-27, Ջեռ. թ. 1875, Էջմիածնայ մատենադարանին, ՀԱ. 1934. էջ 155-156) որուն Հայ բնակչութիւնը 2000 տունէն 600 տունի իջաւ (Սիմոն դպիր Լեհացի, ՀԱ. 1934, էջ 155) ինչպէս նաև ուրիշ շատ մը վայրեր։ Յաղթական կը սոնքար, երբ իր վրայ եկաւ Սօքօլու Հասան փաշան որ Սէփէթլիի մէջ վերջապէս յաղթեց Գարա Եազըճիի (Jonquière Ա. 224) որ խոյս տուաւ Ճանիկի լեռները, Սեւ ծովու եզերքները, ուր մեռաւ իր ստացած վէրքերէն, վրէժ լուծելու պարտականութիւնը թողլով իր եղբօրը Տէլի Հասանի (Jonquière Ա. 224, Ալվազովսքի, Ա. 550, Դարան. 26) որմէ անբաժան մնացին և մինչեւ վերջը օգնեցին Շահվէրտի, Եուլարգափը (կամ Եուլարքասիտի կամ Եուլարքէստի) և Դաւիլ (կամ Դասիլ) ապստամբ զօրավարները (Այվազովսքի Ա. 550, Պատմ. Սեբ. 229)։

Հասան պէկ կը յաղթէ Սօքօլու Հասան փաշային և զայն մինչև Թօգատ կը քշէ։ Հոն այդ քաղաքին խրամներուն մէջ կ'սպանուի Հասան փաշա և քաղաքը կ'իյնայ (1602ին) ապստամբներուն ձեռքը (Jonquière Ա. 225, Դարանաղցի, 30)։ Ապստամբները ասկէ յետոյ շատ զբաղեցուցին Թուրք բանակը և շատ չարիք հասցուցին Փոքր Ասիոյ բնակչութեան (Այվազովսքի, Ա. 551)։ Իր վրայ ղրկուած Խօսրով՝ Տիարպէքիրի փաշան՝ և Դամասկոսի և Հալէպի փաշաները ջախջախուած են և Քէօթահիան՝ Փոքր Ասիոյ արեւմտեան բաժինին մէջ և այնքան մօտ Կ. Պոլսոյ, պաշարուած է յաղթականներէն 1603ին(1)։

Օսմ. պետութեան ջանքերը Հայաստանէն զօրք ճարելու համար անօգուտ կը դառնան և աւելի կը սաստկացնեն անիշխանութիւնը, վասնզի զօրքը փոխանակ ապստամբին վրայ երթալու կողոպուտի հետամուտ կ'ըլլայ և թալանի կու տայ Երզնկան, Կամախը, Տիվրիկը և մերձակայ գաւառները (Դարանաղցի, 37-38)։

Գլուխ չկրնալով ելլել զինու զօրութեամբ այս սոսկալի հակառակորդին հետ, Բ. Դուռը փորձեց կաշառք և նենգութիւն։ Տէլի Հասա-

---

(1) Jonquière (Ա. 225) 1601ին նշանակած է, սակայն սխալ է։ Քէօթահիայի Ս. Աստուածածին եկեղեցւոյն Քիւթիւկին մէջ (անտիպ վաւերագիր, որուն պատճէնը կը պահուի Բարիզի Նուպարեան Մատենադարանը) գրուած է թէ 1603ին «Ճէլալոցն մէջէն անիծեալ Հասան պէկ անուն Ճէլալի եկեալ է աստ ի քաղաքս Քօթահիա եւ այրեալ է զքաղաքս եւ Բ. եկեղեցիքս ի նետ այրեցան, զՍբ. Աստուածածին եւ զՍբ. Թորոսն»:

նը, ոսկիով շլացնելով և Պօսնայի կուսակալութիւնը անոր տալով, համոզեց զէնքերը վար դնելու (1603ին) (Jonquière, Ա. 225, Այվազովսկի, Ա. 551 և Դարանաղցի, 92)։ Ան համակերպեցաւ երթալու Մաճառներուն դէմ պատերազմի (նոյնը), իր ապստամբ հորթաները, բաղկացեալ ո՛չ միայն ապստամբ զինուորներէ, այլ Քիւրտերէ և Թիւրքմէններէ քալեցին քրիստոնէից դէմ և կորսուեցան մեծ մասամբ Մաճառներու դէմ մղուած կռիւներուն մէջ (Jonquière, Ա. 225, Դարանաղցի, 92), և այսպէս վերջ գտաւ Ճէլալիներու կամ Ֆիրարիներու մեծ ապստամբութիւնը, որուն միանալով երկրին կեդրոնին մէջ պատահած անկարգութիւնները, Եւրոպայի կողմը Մաճառներու և Ասիոյ կողմը Պարսից յաջողութիւնները (1603-1604), որոնք հետեւանքն էին պետութիւնը կազմալուծող ներքին այս ապստամբութիւններուն, ցոյց կու տան թէ ժէ. դարուն սկիզբը ի՜նչ սոսկալի վիճակ մը կը ներկայացնէր Թուրքիան, ուր կատարեալ անիշխանութիւն կը տիրէր։

Տէլի Հասանի հնազանդութիւն յայտնելը վերջ չէր տար տագնապին։ Բոլոր ապստամբները զէնքերը վար դրած չէին և չորս նոր պետեր, Գալէնտէր օղլու, Խալիլ, Սաչլու և Գարա Սայիտ, կը տարածէին իրենց իշխանութիւնը Պարսից սահմանագլուխէն և Սուրիայէն մինչև Վոսփորի եզերքները, մասնաւորապէս Սարուխան (Այվազովսկի, Ա. 569, Jonquière, 226)։

Քիւրտերը Ճան-Բոլատի հրամանի տակ միացած, ինչպէս Տիւրզինները՝ էմիր Ֆախրէտտին Մաան Օղլուի, և դաշտային և լեռնային Կիլիկիոյ բնակիչները՝ Ճիմշիտ փաշայի և Սելեւքէի բնակիչները Միւսէլլի Զավուշի, կազմած էին բոլոր Լիբանանի և Տաւրոսի լեռներու բնակիչներէն բաղկացած դաշնակցութիւն մը, ընդդէմ թրքական տիրապետութեան (Jonquière, Ա. 226 և Պատմ. Սեբաս., 230)։

Այս մեծ խառնաշփոթութեան մէջ Տաւրոսի լեռնական Թիւրքմէնները — որոնց վրայ հսկելու պաշտօն ունէր Կեսարիոյ Սերտարը — անմասն չէին։ Արդէն անոնցմէ մեծ թիւ մը ո՛չ միայն Գարա-Եազըճիի բանակին մէջ մտած, այլ նաև անոր յաջորդներուն օգնած էր։

Այս խառնակութենէն օգուտ քաղելով նոյնիսկ «Լաւանդն՝ որ Սաբրչի կոչիւր» 1601ին «Թալնեաց եւ կողոպտեաց... զՍիս քաղաք Կիլիկեցւոց» (Դաւ. 634) և թերեւս ուրիշ լեռնական ցեղեր ուրիշ ասպատակութիւններ ըրին, որոնք այս ընդհանուր խառնակութեան մէջ իբր մասնակի դէպքեր և անկարեւոր, անտեսուած են կամ չեն արձանագրուած։

Շատ հաւանական է ենթադրել թէ նոյն այդ լեռնականները ինչպէս դէպի հարաւ նոյնպէս նաև դէպի հիւսիս, Արգէոսի ուղղութեամբ ալ ասպատակած և Կեսարիոյ շուրջը գտնուած գիւղերու և քաղաքներու մեծ չարիքներ հասուցած և երկրին դատարկանալուն պատճառ եղած են, ինչպէս պիտի տեսնուի։

Կ. Պոլսոյ շրջանակներուն մէջ իր իշխանութիւնը սահմանափակուած Սուլթանը և իր հաւատարիմները, Օսմ. պետութեան գոյութեան սպառնացող այս անիշխանութեան վերջ տալու և կեդրոնի հեղինակութիւնը Անատոլուի վրայ վերահաստատելու համար ամէն ջանք ըրին սակայն չյաջողեցան։ Ղրկուած բանակները յաջորդաբար պարտուեցան և բովանդակ Անատոլուն վերածուեցաւ պատերազմի դաշ-



տի, և սրածութիւններ, կողոպուտներ, աւարառութիւններ և սաստիկ հարկապահանջութիւններ իրարու յաջորդեցին։

Խռովալից վիճակը արգելք եղաւ երկրագործական աշխատութեանց և զարհուրելի սով մը ծայր տալ սկսաւ որ 1599է 1610 տեւեց (Դաւ. 88-92 և Դար. 35-37) այնքան սաստիկ որ ո՛չ միայն շուները և կատուները կերան, այլ մեռած մարդիկը և նոյնիսկ ողջերը կ'ուտէին (Դաւ. 88-89)։ Այնպէս որ չարիքը ամէն համեմատութենէ դուրս էր և աղէտը՝ համատարած։ Երկիրը, ներքուստ և արտաքուստ վտանգուած, տնտեսապէս քայքայուած և կործանման դուռը հասած էր։

Ամէն տեսակ միջոցներ գործադրուեցան ապստամբութեան վերջ տալու համար։ Ամէնէն յաջողը եղաւ Վէզիր և Սպարապետ Ճղալի Օղլու Սինան փաշան որ 1604ին ընդհանուր ներում շնորհելով և խոստումներ ընելով ապստամբները կրցաւ իր շուրջը համախմբել և Պարսից դէմ երթալ, և զանոնք պատերազմին մէջ առաջ քշելով բնաջընջել մասամբ, բայց անոնք որ ողջ մնացին, դարձան շարունակեցին իրենց աւազակային արարքները (Դար. 45-46)։

Այսչափ աղէտներէն յետոյ հազիւ Կ. Պոլիս սթափեցաւ և ազդու միջոցներ ձեռք առաւ երկիրը խաղեցնելու և Ճէլալիները ընկճելու և սովին դարման տանելու համար։

Այս ծանր բայց կենսական գործը յանձնուեցաւ Գույուճու Մուրատ փաշայի, որ Աւստրիոյ դէմ իր շահած յաղթանակին իբր վարձատրութիւն 1607 Յունուարին մեծ եպարքոսութեան բարձրացած էր։ Մուրատ անմիջապէս պատրաստութիւնները լրացնելով Կ. Պոլսոյ մօտերէն սկսաւ յեղուզակներուն դէմ յարձակումները, և բուռն զօրութեամբ և անողոք խստութեամբ յաջողեցաւ ամէնքն ալ զսպել, բոլոր գլխաւորները սպանել ու ջնջել, և հետեւորդները հպատակեցնել և 1608 Դեկտ. 18ին, տարիուկէս անդուլ, անխոնջ աշխատանքէ ետքը, յաղթական փառքով մայրաքաղաք մտաւ, իբրև յաղթութեան նշաւակ առջեւէն տանելով Ճէլալիներէն գրաւուած 400 դրօշներ, իւրաքանչիւրը իր խմբապետի անունովը մակագրուած (J. M. Jouannin et Jules Van Gauer. Turquie, Paris, 1850, 193. Գր. Դարանաղցի, 18 և 142-144 և Այվազովսկի, Ա. 580)։

Անտեղիտալի կորովը և նոյնքան բարձր տաղանդը որ Մեծ-Վէզիրը կիրարկեց այս խիստ դժուարին պայքարին մէջ, Մուրատ փաշային ապահովեցին «Միապետութեան Վերահաստատող» և «Սուր Կայսրութեան» տիտղոսները։

Սովը որ 1609ին այնքան մեծ կոտորած ըրած էր բովանդակ Անատոլուի մէջ՝ մեղմացաւ, շնորհիւ այն հանգամանքին որ Ճէլալիներու զսպումով երկրին բնակիչներուն կարելի եղաւ իրենց գիւղերուն մէջ հաստատուիլ և հողագործական աշխատանքներու ձեռնարկել, արհեստաւորներ համարձակութիւն ստացան իրենց գործերով զբաղիլ և առեւտրականներ ապրանքներու փոխադրութիւն կատարել և ժողովուրդին պէտքերը հոգալ։ Կարծես թէ նոր կեանք մը կ'սկսէր երկրին մէջ ահագին տագնապէ մը ետքը (Ազգապատում, 2307-2308)։ Սակայն Մուրատ փաշայի մահը (5 Օգոստ. 1611) դարձեալ քաջալերեց անկարգ տարրերը վասնզի իրեն յաջորդները հեռու էին իր կորովը և կարողութիւնը ունենալէ։

Մասնաւորապէս Եէնիչէրիներու անկարգութիւնները մեծ համե-

մատութիւններ առին, այնպէս որ Սուլթան Օսման Բ. (1617–1622) փորձեց վերջ տալ անոնց անկարգութեան և այս պատճառով իր կեանքը վրայ տուաւ (15 Մայիս 1622)։ Անկարգ տարրերու այս յաջողութիւնը Անատոլուի մէջ հազիւ հաստատուած անդորրութիւնը խանգարեց, այնպէս որ «կրեց բազում նեղութիւնս եւ վիշտս աշխարհ ի պատառող գայլոյն երկու ամ» (Դարանաղցի, 216)։

Այս նոր փոթորիկին գլխաւոր դերակատարն է Էրզրումի կուսակալ Ապազա փաշա, որ էր «սիրող քրիստոնէից, մանաւանդ եւս առաւել Հայոց» (Դար. 222)։ Այս անձը որ 1623ին Սեբաստիայէն Էրզրում էր տեղափոխուած իբր կուսակալ՝ Օսման Բ.ի հրամանով, իբր երախտաւոր, անոր արեան վրէժխնդիր եղաւ և զէնքի դիմեց, միացնելով հետևորդները Ճան Բոլատի և Դալէնտէր Օղլուի գունդերուն (Jonquière Ա. 240)։ Իր զայրոյթը մասնաւորապէս Ենիչէրիներու դէմ էր (Դարան. 212–215. Այվազովսքի Ա. 631) որոնցմէ կարեւոր թուով կային Կարին «վասն պահպանութեան ընդդէմ Պարսից» «ոմանք ի բնակչաց եւ ոմանք յարտաքնոյս եկեալ» «պակնի եւ նուպաթնիք» անուններով։ Ասոնք հոն ալ կը գործէին իրենց ծանօթ բոլոր անկարգութիւնները (Դար. 212-213) մանաւանդ Սուլթան Օսմանի մահէն յետոյ։ Ապազա նախ յորդորներ ըրաւ «զուլում» չընելու և ապա սպառնաց և երբ տեսաւ թէ անոնք կը շարունակեն իրենց ընթացքը ամէնքն ալ քաղաքէն վանեց (Նոյն, 215–216)։ Կ. Պոլսոյ Ենիչէրիներու ճնշումով Ապազա պաշտօնանկ, դարձեալ Սեբաստիոյ կուսակալ կարգուեցաւ (Նոյն, 217), սակայն մերժեց հնազանդիլ. Ենիչէրիները՝ Եպարքոս Խալիլ փաշան — որուն սիրելին և որդեգիրն էր Ապազան (Դար. 222) — ճնշեցին, զայն կամակից ամբաստանելով։ Խալիլ փաշա խնդրեց Ապազայէն որ Կ. Պոլիս գայ, սակայն անիկա քաջալերուած Սուլթան Օսմանի մօրմէն, ըմբոստութեան դրօշ բարձրացուց և Կարինէն մինչև Էնկիւրիւ արշաւեց կոտորելով (Դաւրիժ. 573. Jonquière Ա. 240) գրաւելով ճամբու վրայ գտնուած քաղաքները ինչպէս Սեբաստիան (Դարանաղցի, 219. Jonquière 240) և հաւանօրէն նաև Կեսարիան։ Ապազա ունէր իր հրամանին տակ 40.000 զօրք (Այվազովսքի Ա. 631) սակայն Էնկիւրիւի միջնաբերդը եօթը ամիս պաշարելէ յետոյ չկրցաւ գրաւել(1) (Դարան. 220–221)։

Այս միջոցին (1624) Սուլթան Մուրատը գահ բարձրացուցին (Նոյն, 221)։ Ասիկա Ճղալ Օղլուն հրամանատար կարգեց և Պրուսան բանակատեղի ըրաւ նոր զօրք հաւաքելու համար։ Սակայն Ենիչէրիները հոն ալ անկարգութիւններ ըրին։ Պարսիկները առիթէն օգուտ քաղելով Պաղտատը գրաւեցին։

Սուլթան Մուրատ Դ. Մեծ Վէզիր և Սպարապետ անուանեց Չէրքէզ Մուհամմէտ փաշան և ղրկեց Ապազայի դէմ, վասնզի շատ մը

---

(1) Շատ հետաքրքրական դրուագ մը կը պատմէ Դարանաղցի (221) ըսելով թէ «Բերդացւոցն ամենայն ինչ նուազեալ էր եւ նեղէին, բայց թոփ-ճեղն (հասկցիր վառօդ) յոյժ սպառեալ, որ կամէր առնուլ. Նա՛ մէկ մարդ Հայ ազգաւ՝ Եղիսէ անուն՝ ի գիշերի զմահ յանձն էառ վասն խիղճ եւ կուռ պատարմանն զբերդն յԱպազայիցն. Նա՛ այս անուն Եղիսէ ... երկու երեք դանթար թոփչեղ հասոյց ծալակաւն ի բերդն եւ կրկին զօրացան բերդացիքն եւ մեծացուցին զայրն, մինչ Հայ հաւատով խապաճութիւն էին տուեր»:



փաշաներ որ նախապէս ղրկուած էին կա՛մ պարտուած կա՛մ անոր կողմը անցած էին (Այվազովսքի Բ. 10)։

Չէրքէզ Մուհամմէտ փաշա (Այվազովսքի Բ. 19) կամ անոր զօրավարներէն մէկը Հաֆըզ փաշա (Jonquière Ա. 241) Կեսարիոյ դաշտին մէջ յաղթեց 26 Մայիս 1624ին Ապազայի, վասնզի անիկա իր կողմը շահած էր գաղտնաբար Ապազայի յարող կուսակալներէն մեծ մասը (Այվազովսքի Բ. 10) կամ անոր համար որ Ապազայի գործակցող Թիւրքմէնները դաւաճանեցին իրեն (Jonquière Ա. 241)։

Ապազա, ստիպուեցաւ Էնկիւրիւի պաշարումն ալ լքելով ապաստանիլ Կարին, ուր «եւս զօրս գումարեաց քան զառաջինն եօթնպատիկ» (Դարանաղցի, 222)։ Զայն հետապնդող Հաֆըզ փաշան, տեսնելով որ կարելի պիտի չըլլայ զայն ընկճել, համաձայնեցաւ զայն Էրզրումի կուսակալութեան մէջ վերահաստատել միակ պայմանով որ Կարնոյ միջնաբերդին մէջ Ենիչէրիներու 10 գունդ պահակազօրք դրուի և անոնց չարիք չգործուի (Jonquière Ա. 241. Այվազովսքի Բ. 10)։ Ասիկա նկատուեցաւ մեծ յաջողութիւն մը, այնպէս որ Հաֆըզ փաշա երբ Չէրքէզ Մուհամմէտ փաշա մեռաւ Թօգատի մէջ, ինքն Մեծ Վէզիր անուանուեցաւ և Պաղտատի վրայ երթալով գրաւեց զայն (1626ին)։ Ապազա՝ Խալիլ փաշա վէզիրին պատճառով յետոյ անգամ մըն ալ ապըստամբեցաւ (1627) և Խուսէֆ փաշայի հնարքով հնազանդութիւն յայտնեց և Պօսնայի կուսակալ կարգուեցաւ (հմմտ. Jonquière Ա. 242. Այվազովսքի Բ. 17–20. Դարանաղցի, 223 և 227 և Դաւրիժեցի, 573, 639–640)։

Ապազա փաշայի ընդարձակ ապստամբութիւնը որ Էրզրումէն մինչև Էնկիւրիւ Ասիական Թուրքիան չփոթի կը մատնէր և մասնաւորապէս իրեն նպատակ ունէր սպառնալ Ենիչէրիներու գոյութեան, անհետեւանք չէր կրնար մնալ։ Նորէն պատեհութենէն կ՚օգտուէին զանազան բռնակալներ, ինչպէս Տէլի Իլահի, Տաղլար Տէլիսի, Տէրէլի Խալիլ, Իլիաս փաշա՝ մականուանեալն Սօլագ Օղլու բռնակալները որոնք Անատոլուի զանազան մասերուն մէջ երեւան կու գան, առանց ըսելու Տիւրզիները որոնք արդէն 30 տարիներէ ի վեր էմիր Ֆախրէտտին Մա՛ան Օղլուի կամ Պէն-Մա՛անի իշխանութեան տակ անկախ դարձած էին և հազիւ կրցած 1635ին կարեւոր հարուած մը ընդունիլ (Jonquière Ա. 244. Այվազովսքի Բ. հատ. 45 և 53) սակայն տակաւին դար մը պահեցին իրենց անկախ վիճակը։

Այս ըմբոստութիւններուն հետ Կ. Պոլսոյ մէջ ալ պակաս չէին խռովութիւններ և յեղափոխութիւններ, որոնք Ենիչէրիները կը յարուցանէին շատ անգամ պահանջելով վէզիրներու գլուխները։

Սուլթան Մուրատ Դ. այս կացութեան առջև թօթափելով հնօրեայ ըմբռնումները՝ կորով ցոյց տուաւ և զբաղեցաւ պետութեան բարեկարգութեան հարցով և կրցաւ կարգ մը գեղծումներ արմատախիլ ընել, աւելցուց պետութեան հասոյթները և վերակազմեց բանակը։

Իր արտակարգ խստութիւնը ապստամբ զինուորականութիւնը զսպեց, սակայն ասիկա բաւական չեղաւ բաղձալի պետական միութիւնը ստեղծելու համար Օսմ. կայսրութեան մէջ, ուր միշտ գոյութիւն ունեցան շրջանակներ որոնք աւելի կամ նուազ կախում ունէին Սուլթանէն և անոր կը հնազանդէին յաճախ անուանապէս։

Ճէլալիներու և Ապազա փաշայի ապստամբութիւնները Փոքր

Ասիոյ բնակչութիւնը գրեթէ բոլորովին թափառիկ դարձուցած և տեղահան ըլլալուն պատճառ եղած էին։

Սուլթան Մուրատ Դ. ուզեց որ սարսափահար ժողովուրդին այն մասը որ Փոքր Ասիայէն հեռացած էր դառնայ իր բնակավայրը։

Սուլթան Մուրատ Դ. Պաղտատը գրաւելու նպատակով երբ 1635ին մեծ բանակի մը գլուխը անցած Կ. Պոլիսէն ճամբայ ելած էր, Կեսարիոյ մօտ Տէվէլի Գարա Հիսար քաղաքը կանգ առաւ (Այվազովսքի, Բ. էջ 53)։ Հոն տեսաւ թէ բազմաթիւ գիւղեր անբնակ դարձած էին։ Ուստի հրաման արձակեց Կ. Պոլիս Գայմագամ Պայրամ Փաշայի որ 30-40 տարիներէ ի վեր Փոքր Ասիոյ մէջ պատահած խռովութիւններու և ապստամբութիւններու հետեւանօք Կեսարիայէն և Փոքր Ասիոյ այլ քաղաքներու բնակիչներէն անոնք որ Կ. Պոլիս և շրջակայքը հաստատուած էին դարձուին իրենց տեղերը (Այվազովսքի, Բ. 61) սակայն այս հրամանը միայն մասամբ գործադրուեցաւ։

Այս դատարկացումը արդարեւ աղէտ մըն էր մնացողներուն համար, վասնզի Օսմ. պետութեան մէջ հարկերը կը գանձուէին կապալով և գիւղերու և քաղաքներու վրայ տուրքը կը սահմանուէր իրենց բնակչութեան ենթադրեալ թիւին համաձայն։ Սուլթան Մէհէմմէտ Բ.ի ատեն սահմանուած տուրքերը դեռ անխախտ կը պահուէին (Այվազովսքի, Բ. 92) մինչ հիմա շատ մը գիւղեր և քաղաքներ ամայացած էին։

Այս պատճառով մեծ անիրաւութիւններու և տառապանքի առարկայ կ'ըլլային Փոքր Ասիոյ բնակիչները։

Սուլթան Իպրահիմ (1640–1648) — որուն համար ըսուած է «մեծ գութ ունէր իր քրիստոնեայ հպատակներուն համար և դիւրաւ հրաման կու տար եկեղեցիներ շինելու» (Այվազովսքի, Բ. 92) — այս անարդարութեան դարման տանելու համար հրաման ըրաւ ճշգրիտ աշխարհագիր մը ընել և ի նորոյ ճշդել իւրաքանչիւր վայրի բնակչութիւնը և տուրքը (Այվազովսքի, Բ. 92)։

Առիկա կարեւոր բարենորոգութիւն մըն էր։ Սակայն միայն առիկա չէր չարիքը, բազմաթիւ ուրիշ չարիքներ կային որոնց դարման պէտք էր տանիլ, Փոքր Ասիան վերակազմելու համար։

Սակայն անոնց վրայ մտածելու ժամանակ չէին թողուր արտաքին պատերազմները և մանաւանդ ներքին խռովութիւնները, որոնց կրկին հանդիսավայր կը դառնար Փոքր Ասիան նոյնիսկ Սուլթան Իպրահիմի օրով (Այվազովսքի, Բ. 111) վասնզի պետութեան մէջ նենգութիւնը և դաւաճանութիւնը ամէն կողմ տիրած էին։ Փտութեան կեդրոնը Կ. Պոլիս էր և կառավարութիւնը բոլորովին ապականած։ Կուսակալութեան պաշտօնները որոնք կապալով կը վաճառուէին նոյնիսկ չարաշահութեանց միջոց կ'ըլլային Վէզիրներու կողմէն կեղծ վաճառումի առարկայ ըլլալով, ինչպէս պատահեցաւ 1643ին Սեբաստիոյ կուսակալութեան համար որ կեղծեօք տրուեցաւ Նասուհ փաշա զադէ Հիւսէյին փաշայի, մինչ ձեռքի տակէ հրաման կը տրուէր 8 տարիէ ի վեր նոյն պաշտօնը վարող Իպրահիմ փաշայի, որ տեղէն չշարժի, այնպէս որ այս վերջինը քաջալերուած Վէզիրէն՝ զօրահաւաք կ'ընէ և կը պատրաստուի դիմադրել նոր կուսակալին, որ Կեսարիոյ մօտ, իր զօրքերով կը յաղթէ Իպրահիմ փաշայի և զայն կ'սպանէ, և վրէժը լուծելու համար Մեծ Վէզիրին նենգութեան, իր բանակով կը



քալէ Կ. Պոլսոյ վրայ և մինչև Սկիւտար կ'առաջանայ, սակայն չի կըրնար Կ. Պոլիս մտնել, այլ գերի իյնալով կը գլխատուի։

Վեց տարի յետոյ (1649) դարձեալ տակնուվրայ կ'ըլլար Փոքր Ասիան, վասնզի երկու նշանաւոր հուղկահարներ, Գաթըրճի-Օղլու և Կիւրճի Նէպի կը յաջողին զայն նուաճելով քալել Կ. Պոլսոյ վրայ, և եթէ վերջինը կը քաւէ իր յանցանքը գլխատութեամբ, առաջինը ներումով մը կը դառնայ Գարամանի պէս կարեւոր նահանգի մը կուսակալը (Jonquière Ա. 250–251. Այվազովսքի, Բ. 135–136), ինչ որ ցոյց կու տար Օսմանեան պետութեան անկեալ վիճակը, որուն դարման տանելու համար Սուլթան Մէհէմմէտ Դ.ի (1649–1687) Մեծ Վէզիրը՝ երբեմն Հալէպի կուսակալ՝ Իփշիր փաշա Գոնիա կը հաւաքէ բոլոր կուսակալները խորհրդակցութեան, սակայն ինքն ալ իր բոլոր նախորդներուն պէս չարաչար կ'անուանէ կեղեքիչ կուսակալներ որոնք «ջիշ ֆիրաար» անունով տուրք մը կը պահանջեն, իբր վարձք իրենց ակռաներուն մաշելուն (Այվազովսքի, Բ. 152), ինչ որ պատճառ կ'ըլլայ որ Անատոլուի բնակիչները գունդագունդ Կ. Պոլիս դիմեն բողոքելու համար Եպարքոսին դէմ, որ վերջապէս պաշտօնանկ կ'ըլլայ 1656ին (նոյն) և իրեն յաջորդ կը կարգուի Քէօփրիւլիւ Մուհամմէտ փաշա (1656–1661), որ իր ձեռք բերած լիազօրութեամբ, զօրաւոր կամքով մը կարգ ու կանոնը կը վերահաստատէ պետութեան մէջ, չխնայելով ոեւէ յանցաւորի որչափ որ ալ բարձր աստիճան ունենար ան (Jonquiére Ա. 252)։ Իրեն յաջորդեց իր որդին՝ Ֆազըլ Ահմէտ փաշա (1661–1676 Հոկտ. 30) որ իր հօրը գործը շարունակեց նոյնքան իմաստութեամբ և կորովով, սակայն նոյն ընտանիքէն Գարա Մուսթաֆա (1676–1683), փճացուց ինչ որ հայր և որդի ստեղծած էին։

Պետութիւնը՝ քայքայման ամէն նշաններ ցոյց կու տար և ապստամբութիւններ և ըմբոստութիւններ ամէն կողմ կը տեսնուէին։

Ապիկար Վէզիրներու շարքին մէջ որոնք իրարու յաջորդեցին երկու կորովի և արժէքաւոր դէմքեր հանդիսացան դարձեալ Քէօփրիւլիւ ընտանիքէն Մուսթաֆա փաշա († 1691 օգոս. 18) և Ամուճազադէ Հիւսէյին փաշա (1698–1703), որոնց գործը սակայն չգնահատուեցաւ և քայքայուեցաւ իրենց մահէն յետոյ։ Հազիւ մի քանի դէմքեր երեւացին որ Քէօփրիւլիւներու գործը փրկել աշխատեցան, սակայն անոնք ալ ըմբոստ և յետադիմական տարրերու զոհերը եղան։ Նոյնիսկ բարեկարգիչ Վէզիրներու պաշտպան Սուլթանները գահընկէց կ'ըլլային, և անկարգ տարրեր սանձարձակ կը գործէին երկրին մէջ, ուր զօրաւորներուն քմահաճոյքը իշխող էր և ամէն գաւառի մէջ մէկ մէկ որջացած աւազակ կամ բախտախնդիր՝ կացութեան տէր դարձած։ Այնպէս որ Օսմ. պետութեան մէջ ամէն սանձարձակութիւն կըրնար գործուիլ, և բարեկարգութիւններ իրագործելու համար պէտք էր հնարքներու դիմել։

Այս տեսակ հետաքրքրական դէպքի մը յիշատակութիւնը, որուն խառնուած է Գարամանի կուսակալ մը, կը բերէ մեզի պատմութիւնը։

Սուլթան Մուսթաֆա Գ.ի (1757–1774) Մեծ-Վէզիրը Գոճա Րաղըպ փաշա, որ նշանաւոր բարենորոգիչ մը եղած է իր բարեկարգական ծրագիրները Սուլթանին հարկադրել տալու և անոր չկամութեան յաղթելու համար, թելադրած էր Գարամանի կուսակալը՝ Ահմէտ փա-

շան որ Կ. Պոլսոյ վրայ քալէ (1760ին)։ Ահմէտ փաշա մինչև Պօլու ա-ռաջացաւ, սակայն Բ. Դուռնէն ստացած թուղթի մը վրայ դարձաւ իր ծննդավայրը Եէնի-Շէհիր և հոն խաղաղութեամբ ապրեցաւ (Այվազովսքի Բ. 469)։

Սակայն եթէ Գարամանի կուսակալին այս ապստամբութիւնը ձև քանի մըն էր, անդին անթիւ և անհամար էին պետութեան ամէն մասերուն մէջ բախտախնդիրներ որոնք իբր ստրէպլէյիններ իրապէս կ'իշխէին զանազան կողմեր և ապստամբներ՝ որոնք բոլոր Թուրքիան տակնուվրայ կ'ընէին։

Այս կարգի խռովութիւններուն ամէնէն նշանաւորներէն մէկը եղաւ այն ապստամբութիւնը որ խմորուեցաւ արևելեան նահանգներու մէջ, բախտախնդիրի մը կողմէ որ ինքզինքն կը հռչակէր «Մահտի» և նպատակ ունէր Փոքր Ասիան գրաւել և Սուլթանին իշխանութենէն հանել։ Ան, Շէյխ Օղլու Օսլօ, որուն յիշատակը քանի մը Քուրդ ցեղեր դեռ կը յարգեն, իր բուն անունովը Giovanni Battista Boetti, Եւրոպացի մըն էր, ծնած ի Piazzan Montferrat։ Անառակ երիտասարդութենէ մը յետոյ, որ լի էր կնամեծար արկածախնդրութիւններով, Boetti դարձի կու գայ և կը մտնէ Ռավէննայի Դոմինիկեանց վանքը։

Դոմինիկեան միաբանութեան կողմէ կը ղրկուի իբր քարոզիչ Մուսուլ, ուր պայքարի կը բռնուի եպիսկոպոսին հետ որ զայն նզովել կու տայ Պապին։ Boetti այն ատեն կը նետէ կրօնաւորական սքեմը և կը յղանայ հսկայական ծրագիրը նոր կրօնքի մը առաքեալը դառնալու և Փոքր Ասիան գրաւելու։ Երկար տարիներ կ'ուսումնասիրէ Անատոլուն և Իրանը, կ'առնէ գլխաւոր քաղաքներու յատակագիծերը, կ'այցելէ եւրոպական մեծ նաւարաններ, կը բանակցի հարուստ Պարսիկի մը՝ Tabeb Labilefի հետ, կը գնէ կէս-միլիոնի զէնքեր և պաշարներ, և այսպէս գետինը պատրաստելէ յետոյ կ'սկսի իր քարոզութեանց 1785 Մարտին Ամատիէի մէջ։ Անիկա ինքզինքն կը ներկայացընէր Մահտի որ իբր թէ յանձնարարութիւն ունէր Մուհամմէտէն յիշեցնելու միւսլիմաններուն անյեղլի սկզբունքները ճշմարիտ հաւատքին, որոնք անտեսուած էին և իր պերճախօսութեամբ կը յափշտակէր բոլոր ժողովուրդը ուր որ կը հանդիպէր։

Քանի մը ամսուան մէջ յաջողեցաւ բոլոր Քիւրտերը գրեթէ իրեն կապել, և յարձակմամբ գրաւել Հայաստանի լեռնադաշտին ռազմական ամէնէն կարևոր կայանը և մայրաքաղաքը՝ Կարինը։ Մարգարէն առաւ Մանսուր անունը և սկսաւ յաղթական քալել Սեբաստիոյ և Զմիւռնիոյ վրայ։

Փոքր Ասիան տակնուվրայ եղաւ։ Կեսարիան և իր շրջականները չէին կրնար զերծ մնալ անշուշտ այս յուզումներէն որոնք կրնային շատ աւելի աղէտալի դառնալ եթէ Բ. Դուռը անհարեկ՝ դեսպաններ չի ղրկեր Մահտիին ամէն գնով զայն Փոքր Ասիայէն ետ դարձնելու պաշտօնով։

Թէ ի՞նչ տրամաբանութեամբ և չարժառիթներով Giovanni Boetti համակերպած է հրաժարելու իր առաջին ծրագիրէն—որ այնքան յաջող սկզբնաւորութիւն մը ունեցած էր— անյայտ կը մնայ միայն իրողութիւն է որ անիկա յանկարծ դարձաւ և գնաց պատերազմիլ Կովկասի ճակատը Ռուսերու դէմ (1787) և այսպէս Փոքր Ասիան փրկուեցաւ(1) (Jonquière Ա. հտ. 317–318)։

Սակայն պետութիւնը չէր փրկուած քայքայումէ քանի որ ասոր նման բազմաթիւ ուրիշ ըմբոստներ կային ամէն կողմ, և պետութեան կեդրոնին մէջ կատարուած ջանքերը պետութիւնը վերակազմելու համար դժուարութիւններու կը հանդիպէին։

Զինուորական վերակազմութիւնը որ Գոճա Րաղըպ փաշա ծրագըրած և չէր կրցած իրագործել դարձեալ օրուան պահանջը դարձաւ և Սուլթան Սէլիմ Գ.՝ Չէլէպի Մուսթաֆա անուն անձի մը թելադրութեամբ, յուսահատ Եէնիչէրիները կարգաւորելէ, նոր զինուորներու գունդ մը կազմեց Նիզամի ճէտիտ անունով և անոնց համար հիմնեց զօրանոցներ և Ֆրանսացի մարզիչներ բերաւ հրացաններու և թնդանօթներու գործածութեան մէջ մարզելու համար։ Անոնց համար մարզավայրեր (թալիմհանէ) որոշեց և վառօդարաններ հիմնեց։ Այս ձեռնարկը իր օգտակար արդիւնքը ունեցաւ, վասնզի Նիզամը Ճէտիտի զինուորները շուտով սորվեցան նորահնար զէնքերուն գործածութիւնը, մինչ Եէնիչէրիք կը յամառէին միշտ մերժել օտար մարզիկներուն հրամանին տակ մտնել և նոր զէնքեր գործածել։

Իւլէմաները՝ որ Եէնիչէրիներու կը գործակցէին և հակառակորդ էին ամէն նորութեանց, շատ գէշ աչքով կը դիտէին ներմուծուած այս նորութիւնները, այնպէս որ երբ Ֆրանսայի դեսպանը մեռաւ, անոնք ամէն ջանք ըրին լուծել տալու համար նոր գունդերը «յորում ոչ սակաւք էին քրիստոնեայք ուրացեալք ի հաւատոյ» (Այվազովսքի Գ. 62) և ետ համբել տալ մարզիչները (հմմտ. Jonqnière Ա. 325, Այվազովսքի Գ. 49–50)։ Սակայն կորովը Քիւչիւք Հիւսէյին փաշային որ այն ատեն Գաբտան փաշայի պաշտօնը կը վարէր և խորագիտութիւնը՝ Վէլի-Զատէ Շէյխ իւլ իսլամին՝ փրկեցին նոր զինուորական կազմակերպութիւնը (Նիզամը ճէտիտ) որուն առաջին ոլորանը եղաւ Փոքր Ասիան և մասնաւորապէս Գարամանը, ուր կատարուեցան ըստ նոր զինուորական օրէնքին առաջին զինուորագրութիւնը և եւրոպական դրութեամբ մարզանքները։ Այս նոր կազմուած գունդերը ցոյց տուին իրենց առաւելութիւնները Աքիայի պաշարման ատեն և Ռումելիի աւազակներուն և հուզկահարներուն դէմ (Այվազովսքի, Գ. 64), ինչ որ պատճառ եղաւ որ Սուլթան Սէլիմ Գ. 1805ին արձակած հրովարտակով ոյժ տայ անոնց կազմակերպութեան, հրամայելով ամէն ուրեք 20–25 տարեկան Եէնիչէրիները զինուորագրել Նիզամը ճէտիտի (Նոյն)։ Այս պատճառով յեղափոխութիւն մը ծագեցաւ, և հարկ եղաւ որ բանակին վերանորոգման համար եղած արմատական կարգադրութիւնները առժամապէս դադրին, սակայն Գարամանի կուսակալ Գատը փաշայի հրամանին տակ անոնք իրենց գոյութիւնը պահեցին։ Գատը փաշա Կեսարիոյ շրջակայքէն առնուած իր 16,000 բարեկարգ ու նոր զօրքերովը Նոյն-

(1) Giovanni Boetti չորս տարի (1787-1791) Ռուսերու դէմ մաքառելէ յետոյ, փոփոխակի յաջողութիւններով, վերջապէս Ռուսերու ձեռքը գերի ինկաւ։ Կատարինէ Զարուհին լաւ վարուեցաւ անոր հետ և զայն բնակեցուց Solovetch, 100.000 ֆրանք տարեթոշակով։

Մանսուր հոն ապրեցաւ մինչև 1798 մեկուսացած, տեղւոյն Հայ Կաթոլիկներու վանքը։

իսկ Ռումելի կոչուեցաւ զսպելու համար Սերպերու ապստամբութիւնը (1805), սակայն Ենիչէրիները բուռն ընդդիմութիւն ցոյց տուին և Գատը փաշա դարձաւ Գարաման իր Նիզամը Ճէտիտ զինուորներով (1806) որոնք իրենց զօրանոցները քաշուեցան։ Քիչ յետոյ Ենիչէրիները Գապագճը Օղլուի գլխաւորութեամբ ըմբոստանալով բարեկարգիչ Սելիմ Գ.ը գահընկեց ըրին և Մուսթաֆա Դ.ը գահ բարձրացուցին (1807 Մայիս), սակայն կարճ տեւեց այս յաջողութիւնը։ Ռումելիի բանակը Ռուսճուգի կուսակալ Ալէմտար կամ Պայրագտար Մուսթաֆա փաշայի գլխաւորութեամբ Կ. Պոլսոյ վրայ քալեց և տապալեց Մուսթաֆա Դ.ը և կայսր հռչակեց Սուլթան Մահմուտ Բ.ը (28 Յուլիս 1808), որ Ալէմտար փաշան եպարքոս կարգելով ուզեց շարունակել Սելիմի գործը։

Եպարքոսին առաջին գործերէն մէկը եղաւ կազմել պետական պաշտօնատարներէ բաղկացեալ Մեծ-խորհուրդ մը (1808 Հոկտ.) որուն պարզեց բանակին վերակազմութեան պէտքը։ Աւագանեաց այս ժողովին, որուն կը մասնակցէին բոլոր կուսակալները, ներկայ եղան նաև Գարամանի կուսակալը Գատը փաշա իր 3000 զօրքերով, ինչպէս նաև Ջափան Օղլու և Գարա Օսման Օղլու, Անատոլուի նշանաւոր ցեղապետները (Այվազովսկի, Գ. 135)։

Սակայն հազիւ տասը ամիս կրցաւ Եպարքոսը ծառայել իր գաղափարներուն, ամենախիստ կերպով պատժելով ըմբոստները և անկարգապահները, վստահելով իրեն 16,000 և Գարամանի կուսակալ Գատը փաշայի 3000 զօրքերուն, որոնք արդարև շատ կարեւոր դեր մը կատարեցին 15 Նոյեմբեր 1808ին Ենիչէրիներու ապստամբութեան օրը փրկելով Ալէմտար փաշայի կեանքը և կատաղօրէն կռուելով անկարգ Ենիչէրիներուն դէմ։ Գատը փաշա ապահովաբար պիտի յաջողէր կացութիւնը փրկել, եթէ երիտասարդ Սուլթանը ձախող միջամտութիւն մը չգործադրէր և ասով պատճառ չըլլար Ալէմտար փաշայի հերոսական մահուան և Գատը փաշայի իրեններէն լքուած փախուստին՝ դէպի Ռուսճուգ, ուրկէ կը փորձէ անցնիլ ծպտեալ Գոնիա, նոր զօրահաւաքի համար, սակայն կը բռնուի և կ'սպանուի (Այվազովսկի, Գ. հտ. 127–144 և Jonquière, Ա. 336–340)։

Յետադիմականները կը յաղթէին և ամէն բան իր նախկին վիճակին մէջ կը մնար, տասնեօթը տարիներ (1809–1826) ուշացնելով նաև երկրին զարգացման բնական ընթացքը և զայն ենթարկելով բազմապիսի ձախողութիւններու։ Այսպէս, այս շրջանին տեղի կ'ունենան Վահապի արաբներու, Սերպերու, Գարատաղցիներու ապստամբութիւնները, Եգիպտոսի մէջ Մեհմէտ Ալիի պահանջկոտութիւնները, Եպիրոսի մէջ Տէբէտէլէլի Ալի փաշայի յեղափոխութիւնը, Մորայի, Դանուբեան իշխանութեանց և բովանդակ Ռումելիի Օրթոտոքս Րայեաներուն ըմբոստացումը և Յունաստանի ապստամբութիւնը (1820)։

Գալով Անատոլուի, հոն կը շարունակուէր այն դժբախտ կացութիւնը որ անոր սովորական ճակատագիրը եղած էր։ Փոքր Ասիոյ հիւսիսային մասին մէջ կը տիրէին Ջափան Օղլուները և Ջմիւռնիոյ դրացի հարուստ հողերուն վրայ, այսպէս ըսելու համար, կը վեհապետէին Գարա Օսման Օղլուները։ Հարիւրէ աւելի կողմնական (collatéral) ճիւղերէ բաղկացեալ այս տոհմերը կը ներկայացնէին իրենց ցեղէն պետի մը ձեռքին տակ իրենց կամաւոր միութեամբ և բազմութեամբ հարուստ և զօրաւոր իշխանութիւններ, որոնք Փոքր Ասիոյ շրջանակին



մէջ ազազուն վիճակի մը կը մատնէին Օսմ. Պետութիւնը։

Չենք կրնար թուել անթիւ և անհամար ձորապետները և բռնապետները որոնք պետութեան ամէն մասերուն մէջ, մանաւանդ անոր հեռաւոր սահմաններուն մէջ որջացած էին արդէն երկար ատենէ ի վեր։

Սուլթան Մահմուտ Բ. փորձեց արիւնի մէջ խեղդել ապստամբութիւնները, մանաւանդ յունականը։ Իր անարեկիչ և խստագոյն միջոցները, — մասնաւորապէս ջարդը խեղճ անզէն ժողովուրդին, որ ազգակիցն է ըմբոստներուն — մէկ ատրճան սանձեցին Կ. Պոլսոյ և Անատոլուի Յոյն բնակչութեան եռանդը, սակայն աւելի բորբոքեցին Մորայի և Արշիպեղագոսի յիսունէ աւելի կղզիներու բնակչութեան զայրոյթը, որ գերազանցապէս երեւան կու գար մանաւանդ ծովահենային ասպատակութիւններով և ուժգին դիմադրութեամբ։ Սուլթան Մահմուտ Բ. հակառակ ամէն տեսակի դժուարութիւններուն որ իր գահը կը շրջապատէին, յամառօրէն հետապնդեց պետութեան ամբողջականութեան վերականգնումը, սակայն իր դէմը գտաւ հոն ալ անկարգ զինուորականութիւնը։ 1821 Ապրիլ 26ին Մոլտա-Վալաքիոյ ապստամբութիւնը զսպելու համար ճամբայ հանուած Ենիչէրիները Կ. Պոլսոյ մէջ յայտնի համարձակ յանդգնեցան աւարառութիւններ ընել, և ասով աւելորդ անգամ մըն ալ ցոյց տալ թէ պետութեան այս ճգնաժամային պահուն ուր ամէն կողմ անջատողական ձգտումներ կ'երեւային, ի՞նչ էր այս զօրքին ոգին։

Այս կացութիւնը քաջալերական էր օտար պետութեանց համար որ Օսմ. պետութեան տկարանալէն յետոյ զանազան ձեւերով հպատակ ցեղերու վրայ պաշտպանութեան իրաւունք ձեռք բերած էին։ Ուստի Ռուսիա, հակառակ անոր որ յունական ապստամբութիւնը ընկճուելու վրայ էր, միջամտեց ի նպաստ իր Յոյն-Օրթոտոքս պաշտպանեալներուն և ուրիշ պետութիւններ զայն մինակ չձգելու համար հարցին խառնուեցան, յանուն քրիստոնէութեան։ Սուլթան Մահմուտ Բ. մերժեց ընդունիլ խորթութեամբ օտարներու միջամտութիւնը, սակայն համոզուած՝ թէ լուրջ վերանորոգութեան մը կը կարօտէր իր պետութիւնը, եռանդով փարեցաւ զայն իրագործելու գաղափարին և ինչպէս շատ գեղեցիկ կերպով ըսած է պատմագիրը իր իշխանութիւնը եղաւ ամբողջ ազգի մը դէմ մաքառումը միակ անձի մը, որ ոչ մէկ վայրկեան իսկ տկարացաւ (Jonquière, Ա. 422), նոյնիսկ չվարանելով ստանալու «Կեավուր Սուլթան» տիտղոսը, եւրոպական ձեւով իր երկիրը վերակազմել ուզելուն համար։

ՍՈՒԼԹԱՆ ՄԱՀՄՈՒՏ Բ. ԱՏԻԼ
(1808 – 1839)
Բարենորոգիչ Օսմ. պետութեան

Եւ այդ բարենորոգչական քայլերուն մէջ որ այս Սուլթանը առաւ, ամէնէն գլխաւորը և կարեւորը եղաւ բնաջնջումը մէկ օրուան մէջ Ենիչէրիներու (16 Յունիս 1826)։ Սուլթան Մահմուտ Բ. այս ար-

մատական քայլով կը փրկէր պետութիւնը իր վրայ ծանրացող զարհուրանքէ մը։

Ենիչէրիներու ջնջումը, անմոռնալի թուական մըն է Օսմ. պետութեան կեանքին մէջ, թէ՛ իբր զինուորական վերակազմութիւն և թէ՛ իբր բարեկարգութեան սկիզբ։

Ապստամբ, անկարգ, վայրագ շփացած այս զինուորականութիւնը, որ աղէտ ու պատուհաս մըն էր երկրին, կը ջնջուէր, երկրին ամէնազգի բնակչութեան ազատ շունչ առնել տալով։ Սակայն պատերազմի վարժ ուժ մը կը պակսէր, այնպիսի պահու մը երբ Թրքական վարչութեան ապիկարութիւնը պետութիւնը հարկադրանքի տակ դրած էր երեք մեծ պետութիւններու հետ պատերազմի մտնելու։



ՄԷՀԷՄՄԷՏ ԱԼԻ ՓԱՇԱ
(Ծն. 1769 – Մեռ. 1849)
Եգիպտոսի կուսակալ, որուն անունով Իպրահիմ փաշա որդին գրաւեց Կեսարիան



ԻՊՐԱՀԻՄ ՓԱՇԱ
(Ծն. 1789 – Մեռ. 1848)
որ յանուն իր հօրը գրաւեց Կեսարիան 1831ին

Հետեւաբար չափազանց ուշ հասած այս բարեկարգութիւնը չկրցաւ սպասուած օգուտը ընծայել և Օսմ. պետութիւնը պարտուած՝ Ադրիանոպոլսոյ դաշինքով (1829 Հոկտ. 7) ստիպուեցաւ ճանչնալ Յունաստանի անկախութիւնը, Սերպերու ինքնավարութիւնը, Դանուբեան իշխանապետութեանց (արդի Ռումանիան) Ռուս հովանաւորութեան ենթարկուիլը և արեւելեան քրիստոնէից վրայ Ռուսերու պաշտպանութիւնը։ Թուրքիոյ անդամահատութիւնը սկսած էր։

Սուլթան Մահմուտ Բ. ապագայ նոր հարուածներու նախատեսութեամբ, Մեծն Պետրոսի հետեւողութեամբ, հիմնական բարենորոգումներ ըրաւ, հակառակ յետադիմականներու ընդդիմութեան, որոնք յայտնապէս կ'արտայայտուէին մայրաքաղաքին մէջ հրձիգութիւններով և գաւառներու մէջ ըմբոստութիւններով, որոնք ամէնքն ալ կորովով ընկճել փորձեց։ Սակայն երկիրը տկարացած և յոռի վարչութիւնը այնքան արմատացած էր որ իր ջանքերը գրեթէ անզօր կը մնային իր բռնի հարկադրած բարենորոգումները ժողովուրդին մէջ խմորելու։ Մասնաւորապէս երկիրն ալ հեռու էր խաղաղութիւն վայելելէ։ Ներքին անկարգութիւններ պետութիւնը կ'սպառէին ներքուստ։ Այս ներքին շփոթներուն ամէնէն ահարկուն եղաւ այն որ Մէհէմմէտ



Ալի Եգիպտոսի կուսակալը, յարոյց։ Իպրահիմ փաշա, որդին այս ըմբոստ կուսակալին Եգիպտական բանակներով Սուրիան նուաճելէ յետոյ անցաւ Տաւրոսը և Կեսարիան, Գոնիան, Քէօթահիան գրաւելով մինչեւ Պրուսա առաջացաւ (1831–1833)։ Եւրոպական միջամտութեամբ գոհացում ստանալէ յետոյ ապստամբ կուսակալը ետ կը քաշուէր, քանի մը տարի յետոյ վերստին նոր պահանջումներ ներկայացնելով գլուխ վերցնելու և նոր յաղթութիւն մը տանելու համար ի Նիզիպ (1839 Յունիս 29) ընդդէմ Սուլթանին բանակին, ճիշդ երկու օր առաջ անոր մահէն (1 Յուլիս 1839)։

Այս ձախողուածը, Եւրոպական պետութեանց երկրին ներքին գործերուն միջամտելու ձեռնարկները, և իրենցմէ ոմանց Թուրքիան անդամահատելու համար ցոյց տուած միտումները, ինչպէս նաև հպատակ ժողովուրդներու հետզհետէ շեշտուած դժգոհութիւնները, որոնք աւելի համարձակօրէն կ'արտայայտուէին, և առիթ ու պատրուակ կը դառնային օտար միջամտութիւններու, Թուրք պետական աւագ պաշտօնատարներէն մէկ մասը համոզեցին թէ պետութեան քայքայումը անխուսափելի էր եթէ բարենորոգութիւններով երկիրը չվերակազմուէր, ինչպէս եւրոպական դիւանագիտութիւնը զգացնել կու տար։

Հետեւաբար Թուրքիոյ վարիչները առաւել կամ նուազ անկեղծութեամբ աշխատեցան անհրաժեշտ բարենորոգումները գործադրել, ոմանք համոզուած թէ երկիրը անոր պէտք ունէր, և ոմանք պարզապէս խաբելու համար եւրոպական դիւանագիտութիւնը որ ինքն ալ իր մէջ համաձայն չէր, վասնզի պետութիւններէն ոմանք կ'ուզէին Թուրքիան վերականգնել ընդհանուր բարեկարգութիւններով, առանց ուշադրութիւն դարձնելու տեղական պայմաններուն և ցեղերու մասնաւոր շահերուն, կեդրոնացման դրութեամբ, Օսմ. արուեստական ազգ մը կազմելով, իսկ ոմանք ընդհակառակը կը պահանջէին բարենորոգումներ ներմուծել երկրին զանազան մասերուն մէջ, տեղական պայմաններու համաձայն։ Այս հակընդդէմ ըմբռնումներէն անշուշտ առաջինն էր որ աւելի հաճելի էր Թուրք վարիչներուն, որոնք կը խորհէին պետութեան ամբողջութիւնը փրկել։

Հետեւաբար Սուլթան Մէճիտի (1839–1861) գահակալութենէն քանի մը ամիս յետոյ 1839 Նոյեմ. 9ին իբր հիմնաքար Թուրքիոյ վերանորոգութեան, հրատարակուեցաւ Թանզիմաթը, որ իբր թէ կը շնորհէր Օսմ. պետութեան բոլոր հպատակներուն անխտիր, Ա. երաշխաւորութիւններ՝ ապահովող թէ՛ կեանքը, թէ՛ պատիւը և թէ՛ ինչքերը, Բ. կանոնաւորում տուրքերու բաշխման և հաւաքման, Գ. կանոնաւորութիւն զինուորագրութեան և զինուորական ծառայութեան տեւողութեան։

Այդ Խաթթը Հիւմայունը, որ թանկագին վաւերագիր մըն էր, իմաստութեամբ և անկեղծ ոգւով գրուած, առանց վերապահութեան մէջտեղ կը դնէր պետութեան անկման պատճառները, Իլթիզամը, Րուշվէթը և այլ, որոնք իսլամ զանգուածին և տիրող դասակարգին ուղն ու ծուծն եղած էին, ուստի եթէ զայն խմբագրող Վէզիրին՝ Րէշիտ փաշայի և զայն ստորագրող Սուլթանին անկեղծութիւնը կասկածի տակ դնել չուզուի իսկ, զանգուածը պիտի չկարենար հաշտուիլ քրիստոնեային հետ հաւասարութեան գաղափարին, որ բուն նպատակակէտն էր այս հրովարտակին։ Հետեւաբար Թանզիմաթը և անոր

յաջորդող բոլոր միւս Խաթթը Հիւմայունները ուրիշ բան մը չըրին եթէ ոչ կրկին ու կրկին յայտարարել այս չարիքներու գոյութիւնը, առանց զանոնք ջնջել համարձակելու։

Ուստի հակառակ որ Թանզիմաթը բերաւ Օսմ. հպատակներու վիճակին մէջ որոշ չափով մեղմացումներ, և անոր ոգւով առնուեցան նոր բարենորոգչական քայլեր, սակայն իրական բարւոքում մը չի տեսնուեցաւ երկրին մէջ, վասնզի Թուրք մտայնութիւնը չէր փոխուած և վարիչները անկեղծ չէին։ Հին Թուրքերը փոխանակ կառավարական ծրագիրներուն դէմ մաքառելու համար յայտնապէս ապստամբելու, ինչպէս կ'ընէին երբեմն Ենիչէրիները, ընդգրկեցին կրաւորական դիմադրութեան կամ անշարժութեամբ ընդդիմանալու դրութիւնը երկրին Կեավուր օրէնքներուն և բարքերուն ենթարկման դէմ։ Ընդդիմադրութիւնը փողոցի ցոյցերը լքելով քաշուած էր ատենակալութեան (bureaucratie) մէջ։ Երեւակայեցէք որ կրօնամոլ դասին զայրոյթին առջև Սուլթան Մէճիտ, վեց անգամ ստիպուեցաւ շնորհազուրկ ընել բարենորոգիչ Րէշիտ փաշան և ամէն անգամ որ նեղ դրութեան մը մատնուեցաւ, վերակոչեց եպարքոսութեան։ Բարենորոգումներն ալ կը հռչակուէին նեղ վայրկեաններու մէջ քիչ յետոյ մոռցուելու համար։ Այնպէս որ քրիստոնեից դժգոհութեան պատճառները կային և կը մնային և բարենորոգմանց պահանջը՝ պահանջ և կը շարունակէր կեանքը Թուրքիոյ մէջ այնպէս ինչպէս էր երբեմն, մասնաւորապէս Կեսարիոյ պէս խուլ անկիւններու մէջ, ուր Թուրք ազգաբնակութիւնը իր բարբարոսութեամբ նշանաւոր էր։ Այնպէս որ Խրիմի պատերազմը (1854–1856) կանխող 1853 Մայիս 26ի հրովարտակը որով Բ. Դուռը բոլոր ոչ-իսլամ հասարակութեանց համար կը վերանորոգէր իր խոստումները, տարտամ բառերով խոստանալով կրօնքի և պաշտամունքի ազատութիւն և նախապէս տրուած բոլոր առանձնաշնորհմանց պահպանութեան ապահովութիւնը, և անոր յաջորդող 1856 Փետր. 6–18ի Խաթթը Հիւմայունը, որ ծանօթ է՝ Իսլահաթի հրովարտակ անունով(1), Կեսարիոյ մէջ կեանքի մեծ շրջափոխութիւն մը չառաջացուցին, և այն դոյզն բարւոքումները որոնք այլուր տեսնուեցան, ինչպէս կարգ մը սովորութեանց ջնջումը, վաղեմի յիմար խտրութիւններու բարձումը, հագուստի կապուստի և այլ մանր մունր բաներու մէջ, որոնք արտաքին էին, ինչպէս քրիստոնեից կրօնական արարողութիւններու անկաշկանդ կիրարկումը, ոչ-իսլամներու համար պաշտօնապէս նախատական բառերու չգործածուիլը, հազիւ թէ Կեսարական բարքերու մէջ մտան։ Հետեւաբար Սուլթան Մէճիտի և իր յաջորդին Սուլթան Ապտիւլ Ազիզի (1861–1876) օրով տրուած բարենորոգումներու նորանոր խոստումները, որոնք միշտ դիւանագիտական նկատումներով և պարզապէս Եւրոպան խաբելու համար կը հրատա-

(1) Յանձնառութիւն որ Եւրոպա, հանդիսաւորապէս նուիրագործեց Բարիզի դաշինքին (1856, Մարտ 18–30) 9րդ յօդուածով։ հաստատելով «այն հաղորդագրութեան բարձր արժէքը» միեւնոյն ատեն յայտարարելով թէ անով «իրաւունք չի տրուիր» իրենց «հաւաքաբար կամ առանձին միջամուխ ըլլալու Վեհ. Դուռին յարաբերութիւններուն իր հպատակներուն հետ, ո՛չ ալ իր տէրութեան ներքին վարչութեան խառնուելու»։



րակուէին, Կեսարիոյ համար չունեցան ոչ մէկ մասնաւոր նշանակութիւն։

Նոյնիսկ 1876 Դեկտ. 11–23ին Սուլթան Համիտի Եւրոպան խաբելու համար հռչակած Միդհատեան Սահմանադրութիւնը, անտարբերութեամբ ընդունուեցաւ Կեսարիոյ մէջ, ուր ո՛չ իսլամները կը հաւատային և ո՛չ ալ քրիստոնեայք, անոր բերած սկզբունքներուն անկեղծութեան։

Պետութեան եւրոպականանալու և կեդրոնացման ձգտումները, 1839էն մինչև 1876 տեւող այս տատանումներու և խարխափումներու շրջանին, միայն մէկ զգալի արդիւնք ունեցան Կեսարիոյ համար։ Իր շուրջը որջացած և կառավարութեան մէջ կառավարութիւն դարձած ցեղապետութիւնները և ձորապետութիւնները, որ Կեսարիոյ համար սպառնալիք մը կը կազմէին, նուաճուեցան։ Մասնաւորապէս Տաւրոսի անցքերը բռնող Թուրքմէնները, ընկճուեցան և անոնց կազմած ձորապետութիւնները ջնջուեցան։

1852–1859ին Գօզանեանց տոհմապետն էր Զատըրճի Մէհէմմէտ, ո-
րուն իբր ենթակայ ճորտեր իր եղբայրները կ'իշխէին զանազան տեղեր։
Հաճըն կը գտնուէր տիրապետութեան տակ Աֆշարներու, որոնց
պետն էր Եուսուֆ, Պէլէնի կը տիրէր Ճօմէր պէկ։ Ասոր մօտն էր Սար-
գոնդ օղլուի վիճակը՝ որուն պետն էր Մուրթազ աղա։ Սիսի կը տի-
րէր Եիւրիւք զօրաւոր ցեղը և Վարշաքներու պետն էր Հաճի պէյ և
Ալա-տաղ լեռներուն և Ջամանդիի միջև տարածուող հողերուն կ'իշ-
խէր Գարսանտ-օղլու տոհմը որուն պետն էր Սամառա պէյ։ Այս իշխա-
նութեան քով էր Մուսթաֆա աղա և Թէքէլի օղլու վիճակները և
ասոնց արեւմտակողմը Գուլղար և Ալա-տաղ լեռներու շրջանակին
մէջ Մելէմէնճի տոհմը և Կիլիկիոյ արեւելեան ծայրը՝ Սև լեռան շըր-
ջանակին մէջ Թուրքմանները որոնց այդ ժամանակի պետն էր Օսման
պէյ։ Այս շրջանակին մէջ կը թափառէր նաեւ անհարկու ցեղ մը՝
Հայուկք անուն, որոնց համար Ալիշան կ'ըսէ թէ «յանուանէն յայտ առ-
նելով զծագումն իւրեանց, այլ խառնեալ ընդ այլոյ տոհմի՝ Քրտահայք համարին»
(Սիսուան, 167)։

Կ. Պոլսոյ կառավարութիւնը դիւրաւ կրցաւ ընկճել և հպատակեցնել այս ցեղերը, վասնզի անոնք իմաստութիւնը չունեցան իրարու միանալու և հաւաքաբար դիմակալելու, ինչպէս Տաւրոսի շուրջը ապրող Հայերը, անհեռատես փութկոտութիւնը ունեցան, անձնուիրութիւն ցոյց տալու Օսմ. բանակին և դաւելու և մատնելու այդ իշխանութիւնները, որոնք մասնաւորապէս 1865ին Տէվրիշ փաշայի և Իսմայիլ փաշայի արեւելքէն և արեւմուտքէն զուգընթաց առաջացման առջև անակնկալի գալով, և անպատրաստ և անզօր կանոնաւոր բանակի մը դէմ պատերազմելու, ստիպուեցան անձնատուր ըլլալ։ Ցեղապետներէն ոմանք սպանուեցան և միւսները աքսորուեցան այլեւայլ հեռաւոր վայրեր և Տաւրոսի կատարները կցուեցան պետութեան և անոր ընդհանուր կազմին մէջ մտան (Սիսուան, 167), և վերջ գտաւ Կեսարիոյ մերձակայ և երբեմն մինչև անոր սահմանները տարածուած տէրէպէյիական այն իշխանութիւնը, որ Եօզկատի և անոր շրջակայից մէջ տիրապետող Չափան օղլուներու իշխանութեան հետ Կեսարիոյ և շրջակայից վրայ մեծ ազդեցութիւն ունեցած էր, տակաւին հազիւ 70–80 տարիներ առաջ։

Երբ մէկ կողմէն այսպէս կեդրոնական կառավարութիւնը բարենորոգումներու պատրուակով իր դիրքը կը զօրացնէր Անատոլուի մէջ, անոր աննուաճ մասերը ընկճելով, միւս կողմէն հպատակ ժողովուրդներու մէջ կ'արծարծուէր իրենց վիճակին բարւոքման յոյսը, վասնզի Եւրոպա կամ մասնաւորապէս Ռուսիա, զէնքով կը միջամտէր 'ի նպաստ Եւրոպական Թուրքիոյ քրիստոնեայ ժողովուրդներուն և իր յաղթանակով կը հարկադրէր Թուրքիան, Կ. Պոլսոյ դուռներուն առջեւ ստորագրելու Այ-Սթէֆանոյի դաշինքը (3 Մարտ 1878) որ յետոյ Պերլինի մէջ կը սրբագրուէր ի նպաստ Թուրքիոյ։ Սակայն այս անգամ Եւրոպական պետութիւնները յուսահատ Թուրքիոյ ամբողջական վերակազմութենէն կ'ընդունէին տեղական պահանջներու գոհացում տալու սկզբունքը և կու տային Ռումանիոյ, Սերպիոյ և Գարատաղի կատարեալ անկախութիւն, Պոսնա Հէրսէքը կը յանձնէին Աւստրիոյ, միայն Կրէտէն, Յունաստանը և Հայաստանը կը ձգէին Թուրքիոյ այն պայմանով որ տեղական պահանջներու համաձայն մասնաւոր բարեկարգութիւններ գործադրէր։

Իսկ Թուրքիոյ միւս մասերուն մէջ ապրող այլազան ազգերու համար Պերլինի դաշնագրին մէջ կը զետեղէին, իբր համազօր Բարիզի 1859ի դաշնագրին 9րդ յօդուածին, 62րդ յօդուած մը, որուն համաձայն «...Օսմ. պետութեան ոչ մէկ կողմը կրօնի տարբերութիւնը մէկու մը դէմ պիտի չկրնայ հանուիլ իբր պատճառ մերժումի կամ անձեռնահասութեան ի մասին քաղաքացիական եւ քաղաքական իրաւանց գործադրման, հանրային դիրքերու, պաշտօններու եւ պատիւներու ընդունելութեան, կամ զանազան արուեստներու եւ ասպարէզներու հետապնդման: Ամէնքն ալ առանց կրօնի խտրութեան պիտի ընդունուին վկայութիւն տալու դատարաններու առջեւ, եւայլն եւայլն...»:

Սակայն Պերլինի դաշնագրին բոլոր այն տրամադրութիւնները, որոնք մասնաւոր շրջանակի մը կամ ընդհանուր երկրին բարեկարգութեան կը վերաբերէին և որոնք ձգուած էին Օսմ. պետութեան բարեհաճութեան, չգործադրուեցան։

Սուլթան Ապտ Իւլ Համիտ Բ. որ ակամայ հռչակած էր Օսմ. Սահմանադրութիւնը, 1877 Մարտ 7ին գումարուիլ սկսած խորհրդարանը 1878 Փետր. 14ին փակեց, անգամ մըն ալ չբանալու մտադրութեամբ և սկսաւ իր միահեծան իշխանութիւնը իր որոշ քաղաքական հասկացողութեամբ, ուր ի յայտ կը բերէր իր անժխտելի կարողութիւնը։ Անիկա առաջին Թուրք վեհապետն էր որ պետութեան վարչութեան համար մասնաւոր Թրքական և իսլամական մտայնութիւն մը կ'ստեղծէր, և որոշ նպատակներ կը հետապնդէր, թէ՛ արտաքին և թէ՛ ներքին քաղաքականութեան տեսակէտով։ Հակառակ անոր որ չափազանց տկարացած էր պետութիւնը և նոյնիսկ օտար ելեւմտական հակակշիռի տակ կը գտնուէր, Սուլթան Համիտ յաջողեցաւ իր անձը ակնածելի դարձնել աշխարհի բոլոր իսլամներու կրօնապետի (Խալիֆայի) իր դիրքին տալով մասնաւոր կարեւորութիւն մը և այսպէս շողացնելով աշխարհի բոլոր իսլամներու միութեան սպառնալիքը ընդդէմ ստուար թուով իսլամ հպատակներ ունեցող աշխարհի երեք մեծ պետութիւններուն՝ Ռուսիոյ, Անգլիոյ և Ֆրանսայի։

Անիկա օգտուեցաւ նաև նոր Թուրքերու ստեղծած Թուրք ազգայնական գաղափարաբանութենէն որ ծնունդ առած էր Սուլթան Մահմուտի օրով հիմերը դրուած կրթական վերածնունդեան շարժումէն յե-



տոյ, և որուն ձգտումն էր համաթուրանական միութիւն մը կերտել Թուրքաստանէն մինչև Դանուբ ապրող Թաթար-Թուրք ժողովուրդներէն, ինչ որ իր կարգին սպառնալիք մըն էր Օսմ. պետութեան դարաւոր ոսոխին՝ Ռուսիոյ դէմ։

Սուլթան Համիտ, արտաքին քաղաքականութեան յենակէտ դարձուց իր իսլամներու Խալիֆայի և Թուրքերու վեհապետի կրկնակ դիրքերը և իր նշանաւոր աճպարարութիւններով, յաջողեցաւ հիանալիօրէն շահագործել Եւրոպական պետութեանց անհամաձայնութիւնները, առաջ տանելու համար իր ծրագրած վերանորոգութիւնը, որուն հիմնաքարն էր «Թուրքիան զուտ Իսլամ և Թուրք պետութիւն մը» դարձնելու ծրագիրը, որ թէ՛ հին և թէ՛ նոր Թուրքերուն հաճոյալի ու ընդունելի գաղափար մըն էր, վասնզի բոլոր Թուրք ազգին մէջ արմատացած էր սա գաղափարը թէ Օսմ. հին Սուլթանները, մասնաւորապէս Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. սխալ մը ըրած էին, շնորհք ընելով որ ոչ-իսլամները ապրին Օսմ. տէրութեան սահմաններուն մէջ, և փոյթ չէին տարած զուտ Թուրք և իսլամ պետութիւն մը կազմելու իրենց զօրաւոր և Եւրոպան դղրդացնող օրերուն, բնաջնջելով, կա՛մ ջարդով կա՛մ բռնի իսլամացմամբ, իրենց այլացեղ և այլակրօն հպատակները։ Անոնք այս սխալին հետեւանքը կը նկատէին այն ներքին յուզումները որոնք կը յարուցանէին քրիստոնեայ ժողովուրդները և այն միջամտութիւնները որոնք կը կատարուէին Եւրոպական պետութեանց կողմէ ի նպաստ այս ժողովուրդներուն։

Հետեւաբար գոհունակութեամբ դիտեցին Սուլթան Համիտի այն ջանքերը որ ան կ'ընէր իր նախնեաց սխալը հնարաւորութեան սահմանին մէջ սրբագրելու համար, ամէն անգամ որ առիթը կը ներկայանար ջարդելով ոչ-իսլամ տարրերը, հնարը գտնելով տեղի չտալու համար օտար միջամտութեան։ Եւ այս առիթները պակաս չեղան, վասնզի Պերլինի դաշնագրութեամբ յուսադրուած ժողովուրդներ — որոնցմէ մէկն էր նաև Հայը — իրենց վիճակին մէջ ոեւէ բարւոքում չգտնալով, խլրտումներ հանեցին։

Ելտըզի գազանը, շրջապատուած իր ստուար հաւատարիմներէն և գործակիցներէն, բովանդակ Թրքութեան համակրանքը և հիացումը իրեն հետ ունենալով, իբր Թրքութեան ներքին զգացումները մարմնացնող ոյժ մը, 33 տարի առաջ տարաւ իր գործը, առանց անհանգիստ ըլլալու։ Մասնաւորելով մեր խօսքը Անատոլուի վրայ, ըսենք թէ Պերլինի 61րդ մեռեալ տառ մնալու դատապարտուած յօդուածը կեանքի կոչելու համար Հայոց կատարած դիմումները, ներկայացուած պահանջները, բողոքները և յուսահատութեան արդիւնք դաւադրական ձեռնարկները, յեղափոխական կազմակերպութիւնները, և ի վերջոյ զինեալ ցոյցերը, սքանչելի առիթներ եղան Համիտի համար Ասիական Թուրքիոյ քրիստոնեայ ամէնէն կարեւոր տարրին՝ Հայոց բնաջնջումը ծրագրելու համար։ Այս ձեռնարկներուն մէջ Կեսարիա, հակառակ անոր որ բուն Հայաստանի մասը չէր կազմեր և երբեք չէր համարուեր այն շրջանակներէն որոնց հարստահարութիւնները բողոքի առարկայ եղած էին, առաջիններէն մէկը եղաւ, որ ազգին դժգոհութիւնը արտայայտել փորձեց, Փոքր Հայքի անունով կազմակերպուած մարմինի մը գործունէութեամբ, որ տեղի տուաւ շռնթալից դատավարութեան մը (1893), որուն անդրադար-

ձութիւնն էր անշուշտ այն ջարդը որ կատարուեցաւ 30 Նոյ. 1895ին, բոլոր Անատոլուի մէջ կատարուած Հայկական կոտորածներու կարգին, որոնց համագումարը 300.000ի կը հասնէր։

Կեսարիոյ մէջ նոյն օրը ջարդուեցան աւելի քան 300 Հայեր և ինչպէս կը հաւաստէ Բրիտանական Համայնագիտարանը (տես տպ. 1911–12ի, Դ. հտ., անոր «ընթացքին բաւական Հայ քահանաներ եւ Բողոքական հովիւներ իրենց կեանքը կորսնցուցին»։ Իսկ սպիտակ ջարդը և այն յատուկ կարգադրութիւնները որոնք յատկապէս Հայոց դէմ ձեռք առնուած էին տնտեսապէս Հայերը փճացնելու համար, ինչպէս նաև իսլամ բնակչութեան լարուած ատելութիւնը որ ամէն օր կը հրահրուէր, կը հիւծէր ո՛չ միայն Հայերը այլ բոլոր քաղաքը և շրջակաները 1896էն 1908, երբ պատահեցաւ մեծ յեղափոխութիւն մը որ Նոր կամ Երիտասարդ կոչուած Թուրքերը յարուցին, վերջ տալու համար Համիտեան ռէժիմին։

Թէ ինչո՞ւ այս յեղափոխութիւնը, երբ ո՛չ մէկ տարբերութիւն կար աշխարհահայեացքի Համիտի և հին ու Նոր Թուրքերուն միջև։ Արդարև ներքին և արտաքին քաղաքականութեան մարզերուն մէջ Համիտ կատարելապէս Թուրք ազգին բաղձանքներուն համաձայն քաղաքականութիւն մը վարելով հանդերձ, իրեն հետ չէին Երիտասարդ կոչուած Թուրքերը, վասնզի Համիտ կը վարէր չափազանց անձնական իշխանութիւն մը, և միայն կը նպաստաւորէր իր հաւատարիմները, իր անձնուէրները, իր շրջապատը և պետական գործերէ հեռու կը պահէր այդ Նորերը, որոնք իրեն կը հակառակէին սոսկ աթոռի սիրոյն, և կողոպուտէն զրկուած ըլլալնուն համար։ Սուլթանին կասկածոտ նկարագիրը, և մտավախութիւնը թէ իր գահընկէց եղած նախորդին վերահաստատութեան ցանկացողներ գոյութիւն ունէին, շահագործուած պէնտէկներու ջոլիրի մը կողմէ, ստեղծեցին իսլամ տարրերու մէջ եւս դժգոհներու բազմութիւն մը, մասնաւորապէս Նորերու մէջ, որ առիթի կ'սպասէր տապալելու Համիտեան ռէժիմը, օրէ օր աւելի անտանելի դարձած։

Այդ առիթը ժէօն-Թիւրքերը միայն գտան Սուլթան Համիտի գահակալութենէն 32 տարի յետոյ, երբ ան, գրեթէ աւելի քան քառորդ դար եւրոպական դիւանագիտութեան ընդդիմակ շահերը ճարտարութեամբ և կատարեալ լարախաղացութեամբ օգտագործելէ յետոյ, հուսկ ուրեմն մեծ պետութեանց միջև կայացած համաձայնութեան մը առջև ստիպուեցաւ ընդունիլ Մակեդոնական բարենորոգութեանց ծրագիրը, անշուշտ դարձեալ զայն չգործադրելու հաստատ մտադրութեամբ։ Գուցէ նորէն յաջողէր իր այդ խաղին մէջ եթէ եւրոպական քաղաքականութիւնը կարեւոր փոփոխութեան մը ենթարկուած չըլլար և երկու ոսոխները՝ Անգլիա և Ռուսիա — որոնց չհաշտուող շահերը 'ի Թուրքիա, այնքան ճարտարութեամբ շահագործեր էր Սուլթան Համիտ —, իրարու բարեկամութեան ձեռք չկարկառէին և չհամաձայնէին այն ամէն կէտերուն վրայ որոնք այսքան տարիներէ ի վեր իբր անլուծելի հանգոյց կամ պատուար երկու մեծ պետութիւնները իրարմէ բաժնած էին։

Գործնական քայլերը որ Եւրոպա կ'առնէր, Թուրքիոյ բաժանումը իրագործելու համար, առաջ բերին Թուրքերու մէջ հակազդեցութիւն մը և Երրեակ Նահանգներու կեդրոնին՝ Սելանիկի մէջ կազմուե-



ցաւ «Ազատութեան» գաղտնի Կոմիտէն (1905) գլխաւորապէս Օսմ. կառավարութեան քաղաքային և զինուորական պաշտօնեաներէն, մեծ մասամբ սպաներէն։ Այս մարմինը շուտով յարաբերութեան մտաւ, արտասահման ապաստանած Երիտասարդ Թուրքերու «Օսմանլը Իթթիհատ վէ Թէրագգը Ճէմիյէթիի» (Օսմ. Ընկերակցութեան Միութեան եւ Յառաջդիմութեան) հետ որ 1907 Դեկտ.ին Բարիզի մէջ իր շուրջը համախմբել աշխատած էր բռնակալութեան բոլոր հակառակորդները և սակայն գործնական յաջողութիւն մը չէր ունեցած, վասնզի երկրին մէջ յենակէտ մը չունէր։ Այս յենակէտը ստեղծուելէն յետոյ, արտասահմանի մէջ գործող մարմինը, որ աւելի իրազեկ էր քաղաքագիտական դարձուածքներու, փութաց առաջ բերել պոռթկում մը, որպէսզի Օսմ. պետութեան ոեւէ մասին անջատումը տեղի չունենայ։ Եւ ասոր համար նորէն սկսան դիմել հին հնարքին, պահանջելով ընդհանուր բարենորոգում մը, տեղական ու մասնաւոր պահանջները անտեսելու համար, սարսափը ունենալով իրենց սրտին մէջ բաժանումի մը և քրիստոնեայ լուծի մը ենթարկուելուն։

Ասոր կռուան կրնար ըլլալ բոլոր ազգերու հաւասարութիւնը և եղբայրութիւնը որ 1876ին Սահմանադրութիւնը իբր թէ կ'ապահովէր և կ'երաշխաւորէր։ Հետեւաբար նպատակակէտ ընտրեցին անոր վերահաստատութիւնը։ Եւ համոզուած թէ Եըլտըզէն Սահմանադրութիւն կորզելու համար բռնի միջոցներու դիմելէն զատ ուրիշ ճամբայ չի կար, իրենց ուշադրութեան առարկայ ըրին բանակը և զայն շահեցան։ Այնպէս որ երբ Նիյազի պէյ՝ Ռէսնէի մէջ լեռ քաշուեցաւ (1908 Մայիս) և Սահմանադրութեան վերահաստատութիւնը պահանջեց, իր վրայ ղրկուած Ռումէլիի զօրքերը մերժեցին զէնք գործածել իրենց եղբայրներուն դէմ։ Այս ապստամբները ջախջախելու համար 1908 Յունիսին Իզմիրէն Սելանիկ բերուած Անատոլուի վաշտերը եւս միացան անոնց և երդում ըրին Սահմանադրութեան վրայ։ Իրերու այս շփոթեցուցիչ կացութեան մէջ, Սուլթան Համիտ սարսափահար հարկադրուեցաւ վերահաստատել 1876ի Գանունի էսասին (1908 Յուլիս 11/24) որ սքանչելի գործիք մը եղաւ Եւրոպական հակակշիռէն երկիրը փրցնելու համար։

Խանդավառութիւնը որ երկիրը ցոյց տուաւ Սահմանադրական վարչաձեւին ընդգրկումին համար, միամիտ արտայայտութիւնն էր ժողովուրդի մը, որ 30 տարի ճնշուած էր լուծի մը տակ որ ի վնաս մեծամասնութեան մը կը նպաստաւորէր փոքրամասնութիւնը Եըլտըզի ստրուկներուն։

Կեսարիա, Թրքական բարբարոսութեան այս հնաւուրց միջնաբերդը, ինչպէս բոլոր Օսմ. պետութեան քաղաքները՝ ունեցաւ իր պոռթկումը, 1908 Յուլիս 11ի վաղորդայնին, բոլորովին տարբեր, ուրիշ տեղերու մէջ պատահածէն։

Սահմանադրութեան հռչակումը Բ. Դուռը հեռագրած էր բոլոր գաւառները, ուր ցոյցեր ու ուրախութիւններ կատարուած էին։ Կեսարիոյ կառավարիչը՝ Արիֆի պէյ, անշուշտ Համիտեան ռէժիմին նեցուկ ու հիացող տեղացի էշրաֆին հետ համախորհուրդ, կը ծածկէ այս հեռագիրը և չի հաղորդեր ժողովուրդին։ 18 Յուլիսին, Կ. Պոլսոյ թղթատարով եկած թերթերէն կ'իմանայ ժողովուրդը իրողութիւնը, և Յուլիս 26ին Իքի Գաբուլը մզկիթին մէջ, Իսլամ, Հայ և Յոյն երե-

ւելիները խորհրդակցութիւն մը կ'ընեն։ Հօճա Հաճի Վահտիի ճաւէն յետոյ կառավարութեան դուռը կ'երթան, յետոյ զինուորական պաշտօնատան առջև Ֆէրիգ և Լիվա փաշաներէն երդում կ'առնեն, ինչպէս նաև կառավարիչէն։ Ցետոյ 5000 հոգիներ, կը խուժեն կառավարական շէնքը և կը պահանջեն բոլոր զեղծարար պաշտօնեաներուն վտարումը։ Կառավարիչը, որ ժողովուրդին այս պահանջումները հեռագրած էր կուսակալութեան կեդրոնը՝ Էնկիւրի, հաղորդեց թէ՝ հրաման եկած է ժողովուրդին դժգոհութեան պատճառ տուող պաշտօնեաները վտարելու։ Նախ անարգանաց նշաւակ եղաւ Մուհասէպէճին, յետոյ թաղապետական ժողովի նախագահը՝ Մուսթաֆան և ապա անոր օգնական՝ Շէյխ Իպրահիմը(1), և որոնք կեղեքած էին բոլոր կեսարացի ժողովուրդը։ Միւս պաշտօնեաները ժողովուրդին անարգանքին տակ մեկնեցան պաշտօնատունէն և անոնցմէ ոմանք ալ բանտարկուեցան։ Կառավարիչը, որ նոյնպէս վտարուած էր, յանկարծամահ եղաւ վախէն ու յուզումէն։ Կառավարչատունը և թաղապետական պաշտօնատունը փակուեցաւ և բանալիները յանձնուեցան Հայոց առաջնորդ Տրդատ եպ. Պալեանի որ դիպուածով՝ գործով մը հոն կը գտնուէր, իբր միակ վստահելին, ինչպէս Թուրքերը կը պոռային այդ ցոյցին միջոցին, մէկ հատ իսկ մաքուր և անբասիր պաշտօնատար մը չգտնալով կառավարչատան մէջ։

Կառավարիչին մահէն յետոյ կազմուեցաւ 40 հոգիէ բաղկացեալ Ցանձնաժողով մը (13ը Թուրք, 10ը՝ զինուորական պաշտօնեայ, 10ը Հայ, 2ը Բողոքական, 2ը Կաթոլիկ, 3ը Յոյն) որ քաղաքին գործերը յանձանձէ։ Այս մարմինին առաջին գործը եղաւ տասը հոգի զրկել քաղաքական իրաւունքներէ (որոնց 3ը Հայ) և բանտարկել տալ Շէյխ Իպրահիմը իր հինգ ընկերներով, վասնզի այս գազանը գաղափարը յղացեր էր Հաճըրարցի Թուրքերը (1895ի ջարդին հերոսները) գրգելու նոր ջարդի մը և գիւղացիք իրենց ընդունած գիրը քաղաք բերելով դաւաճանութիւնը երեւան հանած էին։

Թուրքերը այս յեղափոխական շարժման ատեն մաքրագործման աշխատանքին մէջ կարեւոր դեր կը կատարէ Ճամուս Զատէ Մեհմէտ պէյ, որ կոտորածներու միջոցին հարիւրաւոր հոգիներ ազատած էր։

Սակայն ինչպէս կը թուի կեսարիոյ Թուրք ժողովուրդը առաջին խանդավառութեան տպաւորութեամբ գործած այս արարքներու զղջումը ունեցաւ, և իր բարբարոսական բնազդներու հետ համաձայն չգտաւ քրիստոնեայ և իսլամ տարրերու կատարեալ հաւասարութիւնը և չուտով սկսաւ հոն յետաշրջումը։

Լիվա Խուլգի փաշա, որ կառավարիչի փոխանորդ կարգուած էր, 14 օր յետոյ, բանտէն արձակեց Շէյխ Իպրահիմը, ըսելով որ միտքերը հանդարտած են։ Ժողովուրդը հանրագիրով մը, որուն հազարաւոր ստորագրութիւններուն մէջ կային նաև քրիստոնեայ հոգեւոր պետերուն ստորագրութիւններն ալ, դիմեց դատարան և կրկին անոր բանտարկութիւնը պահանջեց։ Դատարանը, որուն անդամները մեծամասնութեամբ Շէյխ-Իպրահիմի համախոհներն էին, տեսնելով որ ժողովուրդին բողոքները ծանր հետեւանք պիտի ունենան Շէյխին համար, դատական թուղթերը ղրկեց կուսակալութեան կեդրոնը, ուր ձգձգելով մոռցնելու աշխատեցան։

Միւս կողմէն յետաշրջական ոգին հետզհետէ ծաւալ ու զարգացում գտաւ կեսարիոյ Թուրքերուն մէջ, և իր բուռն արտայայտութիւնը ունեցաւ 1909 Յունուար 27ին, ցոյցով մը ընդդէմ նորընտիր կառավարիչ Ճէմալ պէյի (զինադադարէն յետոյ Ներքին գործոց Նախարար և այժմ աքսորական ի Քէօսթէնճէ) որ իրապէս լուսամիտ և անխտրական ոգիով մը նայիլ սկսած էր գործերուն, և ասով անհաճոյ դարձած կեսարիոյ Թուրքերուն։

Այս ցոյցին թելադրիչներն էին իւլէմաները և Տիւրկէր Օղլու Հիլմի և այլք, որոնք ամէն կողմ տարածայնած էին թէ Հայերը պահականոցը կոխած էին և դատարանը զանոնք անպարտ արձակած էր, թէ 16 տարեկան Հայ պատանի մը ոստիկան զինուորի մը վրայ հրացան պարպած էր, թէ 40 Պուլկար քահանաներ Հայոց Առաջնորդարանը պոմպա բերած էին, թէ՝ Մարզուանի, Զէյթունի և այլ տեղերու մէջ Հայերը խռովութիւններ հանած էին և կեսարիոյ մէջ հրացանով և ռումբով մզկիթները պիտի կոխէին և վերջապէս կառավարիչը քրիստոնէից հետ յարաբերութիւն հաստատած և Կեավուր եղած էր։

Խուժանը, որ կը բաղկանար 4–500 սուրով և բիրով զինուած խալամներէ, կը յարձակի կառավարչատան վրայ, որպէսզի նախ պաշտօնանկ ընէ կառավարիչը և յետոյ վրէժխնդիր ըլլայ քրիստոնեաներէն։ Նախայարձակ խումբ մը կը խորտակէ կառավարիչին պաշտօնատեղիին դուռն ու ապակիները և ներս կը խուժէ։ Ճէմալ պէյ, առանց իր պաղարիւնութիւնը կորսնցնելու, ոստիկանի մը զէնքը առնելով անձնապաշտպանութիւն կը փորձէ, և իր զօրքով հոն հասնող Ֆէրիգ Հիւսէյին Հիւսնի փաշայի հրահանգ կու տայ, իր անձնական պատասխանատուութեան տակ, նոյնիսկ զէնքի ուժով խուժանը վանել կառավարական պաշտօնատեղիէն, սակայն զինուորական հրամանատարը չի գործադրեր իր հրամանը։ Երբ Ճէմալ պէյ կը պահանջէ գէթ սուինները հրացանին անցընել, խուժանը կը յարձակի զինուորներուն վրայ, և զանոնք զրկելով կը փորձէ զէնքերը առնել անոնց ձեռքէն։ Մինչ հոճաները կը հրահրէին խուժանը՝ որ տըկարացման նշաններ ցոյց կու տար, Ֆէրիք փաշան կը խնդրէր միւթէսարըֆէն լքել իր պաշտօնատեղին և զինուորական պաշտօնատուն ապաւինել, ինչ որ կը մերժէ ան յայտնելով թէ իր անձին պահպանութենէն աւելի կը փափաքի պահել իր պաշտօնատեղիին պատիւը և հետեւաբար նախամեծար կը համարէ մեռնիլ հոն։

Հօճա մը կը յանդգնի նախատել միւթէսարըֆը իր երեւակայական զեղծումներուն համար, զօլլուգը (պահականոց) կոխող Հայերը 15–20 օր չբանտարկած, չպատժած, անմիջապէս դատարան յանձնած ըլլալուն համար և այլն։ Ճէմալ պէյ խուժանին պոռչտուքին մէջ որ «դո՛ւն Կեավուր ես և Կեավուրներուն պաշտպան» կը պոռար, կը փորձէ բացատրութիւններ տալ, յայտարարելով թէ ինքն բոլոր Օսմանցիներուն և օրէնքին պաշտպան պաշտօնեան է և ուրիշ ոչինչ։

(1) «Շէյխ» տիտղոսը պիտակ մըն էր։ Իպրահիմ, Արփաճը օղլու հասարակ աննշան անձի մը զաւակն էր, որ Համիտի Ներքին գործոց Նախարար Մէմտուհ փաշայի շնորհիւ կաշառքներով յղփացած էր, իր շուրջը համախմբած մի քանի հարստահարիչներով (Բիւզանդիոն, թ. 3830 1909 Մայիս 5/18)։

Վեց ժամուան ցուցարարութենէ մը յետոյ ամբոխը կը ցրուի, յորդորներով և խոստումներով,

Խուժանը ցրուելէն վերջ, Ճէմալ պէյ, կը հեռագրէ Էնկիւրիւ՝ կուսակալին թէ «երկու Հայեր ոստիկան մը վիրաւորած, եւ ուրիշ Հայ մըն ալ զէնք պարպած ըլլալու յանցանքով նախապէս բանտ դրուած, եւ Ասլիյէյի կողմէ իրենց անմեղութիւնը հաստատուելով ազատ արձակուած էին: Եւ այս դէպքը, իբրեւ ծանրակշիռ յանցանք մը նկատելով, խուռն բազմութիւն մը յարձակեցաւ վրաս, քաղաքին անդորրութիւնը վրդովեց, եւ պատճառ եղաւ շուկաներուն գոցուելուն»:

Իրողութիւնը Էնկիւրիւէն Կ. Պոլիս հաղորդուած ըլլալով, Յունուար 28ին, Ներքին Գործոց Նախարարէն կը հասնի հեռագիր մը, ուղղուած Հաքիմին, Միւֆթիին, իւլիւմաններուն, վաճառականներուն, ու իսլամ և Քրիստոնեայ մեծամեծներուն, ուր կ'ըսուէր թէ «Սահմանադրութենէն ի վեր իրենց խոհեմութեամբը եւ իմաստութեամբը ծանօթ Կեսարացին, Մարզուանի եւ Զէյթունի սոյն տարաձայնութիւններն առիթ բռնելով, կը վրդովի, ու կարգ մը անխոհեմներ կը յանդգնին յարձակիլ կառավարիչին վրայ, քաղաքին անդորրութիւնը կը փորձեն խանգարել. բնական է որ այս արարքին պարագլուխներն օրէնքով պիտի պատժուին: Օրէնքի ճամբով պարտ էր եւ պարտ է բողոք բառնալ զանցառու պաշտօնեաներու դէմ: Օրէնքին չյարգուիլը՝ պատասխանատուութիւնը կը հրաւիրէ: Օրէնքին յարգուելուն եւ խաղաղութեան վերահաստատման համար, եթէ կուսակալին Կեսարիա գալը կամ զինուորական ոյժին յաւելումին հարկը պահանջուի՝ հեռագրով խնդրեցէք»:

Նոյն օրն իսկ Իտարէի ժողովը կը գումարուի և առանց որոշումի մը յանգելու ուշ ատեն կը ցրուի: Յունվար 29ին, Հաքիմը և Միւֆթին, կը հրաւիրեն իւլէմաները, վաճառականները, իսլամ և քրիստոնեայ երեւելիները, ընդհանուր ժողով կը կազմեն և մեծամասնութեամբ կը դատապարտեն այս դէպքը, և կ'որոշեն հեռագրել թէ «քաղաքին անդորրութիւնը վրդովուած է, շուկաները գոց են, քննիչ մարմինի մը առաքման անհրաժեշտութիւնը, եւ քաղաքին զինուորական ոյժին յաւելումը կ'զգացնենք»:

Յունվար 30ի Ուրբաթ լուսնալու գիշերը խուճապը կ'սկսի քրիստոնէից մէջ, վասնզի լուր կը տարածուի թէ մոլեռանդ Հաճըլարցիները արշալոյսին քաղաքին վրայ պիտի յարձակին և ջարդեն քրիստոնեաները: Թուրքերու դրացի, անապահով եղող քրիստոնեայ տուները կը պարպուին: Ոմանք ազգականներու տուներ և ոմանք եկեղեցիները կ'ապաւինին: Կին մը վախէն կը մեռնի, ուրիշ մը կը խելագարի:

Խառնակիչներ միեւնոյն ատեն անարբեկելու համար իսլամները և զանոնք գրգռելու համար, անոնց ալ հաւատացուցած էին թէ քրիստոնեաները մզկիթները օդը պիտի հանեն և զիրենք պիտի կոտորեն: Այնպէս որ լարուած վիճակ մը ստեղծուած էր:

Կ. Պոլիսէն եկած հեռագիր մը որ կը հաղորդէր մեկնումը 850 հոգիէ բաղկացեալ ջոկատի մը դէպի Կեսարիա և կը յանձնարարէր մինչև անոնց հասնիլը, եթէ հարկ զգացուի մօտաւորագոյն վայրէ մը գունդ մը զինուոր բերել, սփոփարար ազդեցութիւն կ'ունենայ և մթնոլորտը կը խաղաղի:

Կառավարիչին կորովը ձախողութեան մատնած էր յետաշրջականներու ձեռնարկը, հետեւաբար Թուրքերը վերստին կը դիմեն իրենց



օձի լեզուին և կ'սկսին ըսել «մենք քրիստոնէից դէմ ո՛չ մէկ ատելութիւն ունէինք»:

Նկատելի է որ Կիլիկիոյ կոտորածին և 1909 Մարտ 31ի Կ. Պոլսոյ յետաշրջական շարժման առաջին ազդանշանը հանդիսացող այս ցոյցին միջոցին, Իթթիհատ և Թէրագգըի անդամներէն ոչ ոք հրապարակ կու գայ (Բիւզանդիոն, թ. 3763, 1909, Փետր. 11–24):

Ինչպէս կը տեսնուի Կեսարիա առաջին վայրը կ'ըլլար որ կը ծառանար Սահմանադրութեան դէմ և կը փորձէր Հայերը ջարդել, հասկցնելով թէ որքան խաբուսիկ ու սին հիմնարկութիւն մըն էր Օսմ. Սահմանադրութիւնը: Արդարև «Իթթիհատ վէ Թէրագգը» կուսակցութեան, քուէներու մեծամասնութեան ուժին վրայ յենած Թուրքերու գերակշռութիւնը ապահովելու ձեռնարկները, և արդարութիւն և հաւասարութիւն չընելը՝ որեւէ զրկանքի համար որ քրիստոնեայք կրած էին, մանաւանդ 1909 Մարտ 31ի յետաշրջական շարժումը և Կիլիկեան զարհուրելի եղեռն, ցոյց տուին թէ Սահմանադրական Թուրքիան, ո՛չ մէկ տարբերութիւն կը ներկայացնէր բռնապետականէն և ամէնքն ալ իրար կ'արժէին:

Այս յետաշրջական մեծ շարժումը որ բովանդակ երկիրը խառնակութեան մատնած էր, Կիլիկիոյ դուռներուն մօտ գտնուող Կեսարիոյ վայրագ Թուրքերուն մէջ, որոնք ամիս մը առաջ Հայերը ջարդել փորձած և շնորհիւ Ճէմալ պէյի չէին յաջողած, անկարելի էր որ կրկին ախորժակներ չի սրեր:

Արդարև հազիւ թէ Կիլիկիոյ ջարդը արձագանգ գտած՝ Կեսարիոյ մէջ, Ապրիլ 12, Կիրակի օրը 4–5000 Թուրքեր կը յարձակին կառավարչատան վրայ և կը պահանջեն զէնք՝ պաշտպանուելու համար Զէյթունցի կեավուրներուն դէմ, որոնք իբր թէ Կէօստէրէի բոլոր Թրքաբնակ գիւղերը աւերելով քաղաքին վրայ կը քալէին: Ասիկա մեքենայութիւն մըն էր որ ապահովաբար Ֆէրիգ Հիւսէյին Հիւսնի փաշա նիւթած էր, Ատանա և Հաճըն ղրկուելու համար Րէտիֆները իգէն կոչելու հրամանը առիթ բռնելով:

Ճէմալ պէյ՝ որ իզուր կ'աշխատի հանդարտեցնել կատաղի բազմութիւնը, յուսահատ կը պահանջէ Ֆէրիգ Հիւսէյին Հիւսնի փաշայէն որ զէնքի ոյժով ցրուէ զինատան վրայ յարձակիլ փորձող խուժանը, սակայն անիկա կրկին կ'անսաստէ և իր խօսքերովը աւելի կը սրտապնդէ զանոնք:

Զէյթունցիներու քաղաքին վրայ քալելու լուրը քանի մը հոգի կը տարածեն Թուրքերու շուկաները եւս: Անոնք սարսափահար խոյս կու տան, առանց խանութները գոցելու: Իրիկուան եկեղեցիէն ելլող կիները այս վիճակը տեսնելով կ'անճրկին, կը նուաղին ու ահա կ'սկսի խուճապը նաև Հայոց թաղերուն մէջ: Հեռուէն եկող զօրակոչը և հրացանի պայթիւնները Հայերը կ'ստիպեն ինքնապաշտպանութեան դիմել: Վայրկենի մը գործ կ'ըլլայ այս: Այրերն առանց ահաբեկելու կիներու աճապարանքէն, իրենց տուներուն մէջ և տանիքներուն վրայ դիրքերը կը գրաւեն, Ատանայի Հայոց վիճակակից չըլլալու համար:

Ժամը 11ին ատենները յանկարծ կը պաշարուի Պաղչէ-Պաշըի Հնչակեանց Ժիրայր Գրադարանը (Քիթապճեաններու շէնքը): Թուրքերը կը պահանջեն որ Հնչակեան գործիչը՝ Ազատ Ոստա-

նիկ(1) անմիջապէս քաղաքէն հեռանայ։ Ֆերիք փաշան իսկոյն զինուորներ կը ղրկէ և պաշարել կու տայ։ Վարէն, զինուորներ երեք մասի բաժնուած՝ զանազան դիրքեր բռնած են այդ տան դիմացը ու բռնի կ'ստիպեն որ վար իջնէ և անձնատուր ըլլայ։ Ոստանիկ կը մերժէ օրէնքի հակառակ նկատելով այս պահանջը և յանձն կ'առնէ ինքնակամ ներկայանալ կառավարիչին։

Գիշերը զինուորները կը հեռանան և կառավարիչի օգնականը՝ Ղազարոս Սայապալեան կու գայ տեսնուիլ Ոստանիկի հետ և յայտնել թէ խուժանը հետզհետէ աւելի պահանջկոտ՝ իր անձին և անունին դէմ խոր ատելութիւն ցոյց կու տայ։

Ոստանիկ կը թողու Հնչակեան կեդրոնատեղին և կ'երթայ կառավարիչին մօտ և զգացնելով եղած ապօրինի ձեռնարկը, ինք առիթ տուած չըլլալու համար արիւնհեղութեան մը, կը համակերպի հեռանալ քաղաքէն գիշերուան ժամը 8ին, կառավարիչի օգնականին և երկու ոստիկան-զինուորներու հետ։

Հետեւեալ օրը քաղաքը մեռելութեան մէջ էր։ Հայերու կազմ ու պատրաստ վիճակը, կառավարիչ Ճէմալ պէյի և կանոնաւոր զօրաց հազարապետ Համիտ պէյի ձեռք առած միջոցները, անգամ մըն ալ կը ջլատեն Կեսարիոյ Թուրքերու մոլեռանդութիւնը և թալանի և ջարդի ախորժակը։

Ճէմալ պէյ, ո՛չ այնքան խուժանին անարգանքին, այլ զինուորական հրամանատար Հիւսէյին Հիւսնի փաշայի կրկին անգամ ցոյց տուած՝ խուժանը խրախուսող ընթացքէն դժգոհ, կը հրաժարի իր պաշտօնէն։ Էնկիւրիւի կուսակալը, հեռագրով հրաժարականը կ'ընդունի և փոխանորդ կը կարգէ նոյնիսկ Հիւսէյին Հիւսնի փաշան։ Ասիկա կը որոտաբեկէ քրիստոնեաները որոնց կրօնական պետերը, Յիսուսեանք և Միսիոնարք հեռագրով անհրաժեշտ ցոյց կու տան Ճէմալ պէյի ներկայութիւնը։ Կուսակալը կը հրամայէ շարունակել իր պաշտօնը։ 14 Ապրիլին հազարապետ Համիտ պէյ, Հօճա Միրյաս զատէ Հաճի Ալի և Թուրք և Հայ երեւելիներ եկեղեցիները ապաւինող ժողովուրդին կը հաղորդեն թէ վտանգը անցած է և կը յորդորեն որ ամէն մարդ իր տունը դառնայ և իր գործերով զբաղի (Բիւզանդիոն, թ. 3824. 1909, Ապրիլ 28–11 Մայիս)։

Նոյն օրը կը հասնի Կեսարիա աւետաբեր հեռագիրը Սուլթան Համիտի գահընկէցութեան և յետադիմական տարրերը անգամ մըն ալ կը շուարին ամօթապարտ՝ իրենց ձախողուածին համար, որ պարզապէս Կեսարացիք կը պարտէին Ճէմալ պէյի, որ ամրապնդելու համար անդորրութիւնը քրիստոնեաներու երեւակայական յարձակումը յերիւրողներէն տասնեմէկ հոգի ձերբակալել կու տայ և քաղաքին երկու հրապարակներուն վրայ զոյգ մը կախաղաններ կը բարձրացնէ իբր սպառնալիք խռովարարներուն (Բիւզանդիոն, թ. 3830, 1909 Մայիս 5/18)։ Նկատելի է որ այս տագնապի օրերուն Կեսարիա կը հասնէր Շէյխ Իպրահիմ, անշուշտ ո՛չ բոլորովին դիպուածով (Նոյն)։

Հակառակ այս շատ յատկանշական և տխուր երեւոյթներուն, որոնք Թուրք ոգին և Սահմանադրութեան որքան խախուտ ու խաբու-

(1) Ազատ Ոստանիկը, իր իրական անունով Վանեցի Մելքոն Միրզաքեան, Թուրքերը կը կոչէին Ռաչըր.



սիկ հիմնարկութիւն մը ըլլալը որոշ ցոյց կու տային, Օսմ. կայսրութեան բաղկացուցիչ տարրերը, մասնաւորապէս Հայերը, բարեմտութեամբ Կիլիկեան եղեռնը՝ վերագրելով յետադիմական տարրերու, տակաւին վարկ ու վստահութիւն ըրին իթթիհատական վարիչներու, գիտնալով հանդերձ թէ կառավարութիւնը ինքն իսկ սարքած էր Կիլիկիոյ կոտորածը:

Սակայն շուտով տեսնուեցաւ թէ սոսկ ինքնախաբէութիւն մըն էր, հաւատալ Թուրքիոյ վերանորոգութեան։

1912ին Պալքանեան պետութիւնները երեք տարիներու սպասումէ մը յետոյ, յուսահատ Սահմանադրութենէն ոեւէ բարիք ակնկալելէ և տեսնելով բռնապետական մեթոտներու տեւականացումը և հարըստահարութեանց շարունակութիւնը, իրենց ցեղակիցները փրկելու համար թրքական լուծէն, հաւաքաբար և զինակցաբար յարձակեցան Օսմ. կայսրութեան Եւրոպական նահանգներուն վրայ և զանոնք կորզեցին։

Այս առթիւ Ասիական բաժինի գլխաւոր ժողովուրդը՝ Հայերը, նաև հետամուտ՝ դարման տանելու իրենց թշուառ կացութեան, բողոքի ձայն բարձրացուցին։ Եւրոպական դիւանագիտութիւնը Արեւելեան վեց նահանգներու մէջ բարենորոգմանց հարցը սեղանին վրայ բերաւ և Բ. Դուռը հարկադրուեցաւ ակամայ համակերպիլ Ռումելիի կորուստին և Հայաստանի բարենորոգմանց՝ օտար հակակշիռի տակ։

1914, Յունվ. 26/8 Փետր.ի պայմանագրով Բ. Դուռը յանձն առաւ Հայաստանը բաժնել երկու շրջաններու, Եւրոպացի Մարզպաններու իշխանութեան տակ, սակայն չկամութեամբ և ճնշումի տակ ստորագրուած այս յանձնառութիւնը անգործադրելի մնաց վասնզի Ընդհ. Պատերազմը պայթեցաւ (1914–1918) և այս համաշխարհային տակնուվրայութենէն օգուտ քաղելով Թուրքիա ո՛չ միայն իր յանձնառութիւնը ջնջեց այլ պատերազմին մասնակցեցաւ այս անգամ բոլորովին եւրոպական միջամտութենէն և անոր շարժառիթ քրիստոնեայ բնակչութենէն ձերբազատուելու հաստատ մտադրութեամբ։

Զարաչար պարտուած, անհագին հողամասեր, ինչպէս Սուրիա, Միջագետք, Պաղեստին և այլ, կորսնցուց և ստիպուեցաւ ստորագրել Սեւրի դաշնագիրը որ Հայաստանը, Կիլիկիան և Յոնիան ալ կը կորզէր իրմէ, սակայն ինչպէս ուրիշ անգամներ, այս անգամ ալ Թուրքերը անգործադրելի ձգելու համար այդ դաշնագիրը, չճանչցան զայն ստորագրող Բ. Դրան հեղինակութիւնը, և Էնկիւրիւի մէջ իբր թէ հասարակապետական, իսկ իրապէս տիքտատորական հիման վրայ, Հանրապետութիւն մը հիմնեցին և յաջողեցան Հայաստանը, Կիլիկիան և Յոնիան պահելու պայմանով Լօզանի դաշինքը ձեռք բերել, յաղթելով յոյն բանակին, և ձերբազատել երկիրը ամէն օտար ազդեցութենէ և կազմել զուտ Թուրք պետութիւն մը, առանց օտար տարրերու, որոնցմէ մաքրագործած էին երկիրը պատերազմի շրջանին՝ ջարդելով և անկէ յետոյ արտաքսմամբ և սպիտակ ջարդով։

Այսօր զուտ Թուրք և իսլամ պետութիւն մը կազմելու իտէալը իրագործուած է, վասնզի Թուրք հանրապետութեան սահմաններուն մէջ, բացի Կ. Պոլիսէն գրեթէ քրիստոնեայ այլացեղ և այլակրօն իր երբեմնի հոծ բնակչութենէն միայն աննշան հետքեր մնացած են,

անոնք ալ դատապարտուած այսօր կամ վաղը հեռանալու կամ յարմար առիթ մը անէանալու համար Թրքական եաթաղանին տակ։

Կեսարիա ալ իբր մասը Անատոլուի, ստուար մեծամասնութեամբ դատարկացած է այսօր իր ոչ-իսլամ բնակչութենէն, և հոն միայն Հայ երբեմնի գաղութին վերջին խլեակներն են որ կ'ապրին, կամ աւելի ճիշդ, կը քաշքշեն իրենց գոյութիւնը, անհասանելի զրկանքներու մէջ, մինչ Թուրքերը կը ձգտին Կեսարիան դարձնել ճարտարարուեստական քաղաք մը, տարազագործութեան և օդանաւորդութեան գործարաններու շինութեամբ։

---

ԺԶ.

# ՀԱՅՔ ՕՍՄԱՆԵԱՆ ԹՈՒՐՔԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

(1471էն մինչեւ հիմա)

---

## Ա.

## ԽՌՈՎԱՅՈՅԶ ԵՒ ՎԱՅՐԱԳ ԹՈՒՐՔԻՈՅ ՄԷՋ ՀՊԱՏԱԿՆԵՐՈՒՆ ԴԻՐՔԸ

Արգէոսի շուրջ վաղընջական ժամանակներէ ի վեր համախմբուած Հայութիւնը Օսմ. պետութեան լուծին տակ մտնելէն յետոյ, ո՛չ տեւական անդորրութիւն և ո՛չ հանգիստ ժամանակամիջոց մը ունեցած է, ինչպէս տեսնուեցաւ։

Մէկ կողմէն հալածանքներ և կեղեքումներ, միւս կողմէն չփոթութիւններ և խառնակութիւններ, երբեք չեն թողած Կեսարիոյ Հայերը որ ամուր, տեւական ու հաստատուն վիճակ մը ունենան և ո՛չ ալ երջանիկ ու խաղաղ ժամանակամիջոց մը։ Շարունակ անոնք կաթսայի վրայ եղած են և սպասուած և չսպասուած հարուածներ զիրենք չփոթեցուցած և իրենց կեանքը վրդոված։ Միշտ զուլումներ և պատուհասներ, յաճախ մարդկային և երբեմն աստուածային զիրենք հարուածած են և զանոնք հանգիստ չեն ձգած։

Մանաւանդ իշխանաւորներու, կամ տիրապետող դասուն, մեծ ու փոքր բռնապետներուն, հարստահարութիւնները և կեղեքումները, և բուն իշխանութեան՝ կառավարութեան իսկ հրամայած ջարդերը և տեղահանութիւնները, արդարև հարկադրած են ապրիլ Կեսարացի Հայերը, դժոխքի մը մէջ ուր սպառած են ծիւրելով։

Երբ Օսմ. պետութիւնը նուաճեց Անատոլուն, երկրին բնակչութեան մեծամասնութիւնը քրիստոնեայ էր, քանի որ Ռումի Սելջուկներու տէրութեան մէջ իսլամներու համեմատութիւնը տասնի դէմ մէկ էր, ինչպէս տեսնուեցաւ։ Պարսկական պատերազմներու և ներքին այնքան խառնակութիւններու, մանաւանդ Ճելալիներու ապստամբութիւններու զարհուրելի հետեւանքները — բռնագաղթեր, սովեր և ժանտախտի համաճարակներ — կրելէ յետոյ, ժէ. դարուն կէսերը, Հայաստան ուղեւորող նշանաւոր ճանապարհորդ մը՝ Թավերնիէ(1) կ'ըսէ թէ «Թօզաթէն մինչեւ Թաւրէզ՝ երկիրը գրեթէ միմիայն քրիստոնեաներէն բնակուած է եւ ըստ որում այս ընդարձակ տարածութիւնը նախնեաց Հայաստանի նահանգ կոչածն է, պէտք չէ զարմանալ եթէ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ **մէկ մահմետականի փոխարէն յիսուն Հայ կը գտնուի»** (Les six voyages de Jean Baptiste Tavernier, en Turquie, en Perse et aux Indes, Paris. 1713, Ա. 47–48)։ Եթէ նոյնիսկ այս համեմատութեան մէջ չափազանցութիւն կայ, անուրանալի իրողութիւն մըն է որ Թուրքերը աննշան փոքրամասնութիւն մըն էին որ տիրած էին թուով և քաղաքակրթութեամբ իրենցմէ չափազանց գերազանց այլացեղ և բազմակըրօն ժողովուրդներու, որոնք հնազանդ պահելու համար միայն սուրը ունէին միջոց։ Ուստի իրենց սեփական մենաշնորհը ըրին զինուորականութիւնը և կազմեցին տիրող դասը՝ որ ահաբեկումը և կեղեքումը իբր միջոց գործածեց՝ հպատակութեան մէջ պահելու համար նուաճուած ժողովուրդները, վասնզի զուրկ սեփական քաղաքակրթութենէ և անընդունակ մտաւոր և մշակութային գործունէութեան, անկարող էին բարոյական միջոցներ կիրարկելու իրենց հպատակները կապելու համար պետութեան, միութեան մը մէջ ուր այլազան ցեղեր իրենց բոլոր ոյժերը տրամադրէին, հաւասար իրաւունքներով և պարտականութիւններով։

Ուստի հպատակ ժողովուրդներու բնաջնջումը փափաքեցան և գուցէ զայն կատարած և աւարտած պիտի ըլլային վաղուց, եթէ զանոնք խուզելու ընչաքաղցութիւնը և երկրին առեւտուրը, երկրագործութիւնը, ճարտարարուեստը պահպանելու իրենց անկարողութիւնը, վարանումի մատնած չըլլար զիրենք։

Թուրքերը հանդուրժեցին քրիստոնեաներու գոյութեան, զանոնք նկատելով իրենց նախիրները (ռայեա) և ստրուկները, որոնք պէտք էր արդիւնաբերէին և աշխատէին իրենց համար, առանց ոեւէ իրաւունք վայելելու։

## Բ.

## ԹԻՒԻ ԽՆԴԻՐԸ ԵՒ ԱՐՏԱԿԱՐԳ ՄԻՋՈՑՆԵՐ

Թուրքերը՝ ոչ-իսլամները նուաստ վիճակի և մշտական հնոցի մը մէջ պահելով հանդերձ, չդադրեցան նաև մտատանջուելէ անոնց թիւի խնդիրովը և զայն ի նպաստ իրենց սրբագրելու համար ո՛չ մէկ վայրագ ու հակամարդկային արարքի առջև կանգ առին, զանոնք թրքացնելու համար։ Նախ անոնք ամէն անգամ որ քաղաքի մը կը տիրա-

(1) Tavernier (1605–1689†) Ֆրանսացի, որ 1632ին, 1638–1642ին, 1643–1649ին, 1652–1656ին, 1657–1662ին, և 1663–1668ին վեց անգամ Արեւելք ուղեւորած է։

նային իբր գերի ի վաճառ կը հանէին քաղաքին կիները, աղջիկները, երիտասարդներն ու մանուկները, և բռնի կը հարկադրէին թրքանալ։ Կեսարիա, որ երկու անգամ առնուած տրուած էր Թուրք բանակներէն, հաւանօրէն ճաշակած պէտք է ըլլայ, աւելի կամ նուազ անողոքութեամբ, այս դառնութիւնը որ սկիզբն էր միայն երկանց։

Անգամ մը հոն տեղաւորուած, գործադրած են, նաև Կեսարիոյ մէջ, այն բոլոր միջոցները որոնք իրենցը եղած են, և որոնք երկու դասի կը բաժնուէին, ընդհանուր և տեղական։

Ընդհանուր նկարագիր ունեցող միջոցները, որոնք Սուլթաններու հրամանէն կախում ունէին, և որոնք կ'արտայայտուէին առհասարակ ջարդերով և տեղահանութիւններով, կատարուած են նաև Կեսարիոյ մէջ, և եթէ ինչպէս բոլոր Օսմ. կայսրութեան, նոյնպէս նաև Կապադովկիոյ մէջ, չեն ունեցած վճռական ու վախճանական հետեւանք, պատճառն այն է որ ճարահատ քրիստոնեայք, հուսկ յետին վայրկեաններու հնարիմացութիւններով կամ այլ միջոցներով, ամբողջ կամ մասամբ, ինքզինքնին փրկելու միջոցը գտած են։ Պատմութիւնը կը յիշատակէ թէ անգութ և արիւնկզակ Սէլիմ Ա. Եաւուզ (1512–1520), արդի Թուրք գաղափարականութեան հիացումին առարկայ աշխարհակալ վեհապետը և Օսմ. առաջին Խալիֆա–Սուլթանը, յղացած է Բիւզանդական կայսրերու «մէկ պետութիւն, մէկ ազգ և մէկ կրօնք» իտէալը սուրով գործադրելու գաղափարը և նախ Պարսից դէմ իր ունեցած ատելութեան յագուրդ տալու համար Թուրքիոյ մէջ ապրող Շիի աղանդին հետեւող 40.000 անձեր(1) մէկ օրուան մէջ կոտորել տուած է(2) (Այվազովսկի Ա. 301)։ Սէլիմ, «Պարսկադեն աղանդաւորաց» կոտորածէն յետոյ, որոշած էր բնաջինջ ընել նաև իր պետութեան քրիստոնեաները, և իր այս անգութ որոշումն ալ գործադրութեան դնել պիտի տար՝ եթէ հաւանօրէն քրիստոնեաներէն շահուած իր Շէյխ–իւլ–իսլամը՝ Ճէմալի՝ հնարիմացութեամբ մը արգելք չ'ըլլար և չի փրկեր բոլոր ոչ-իսլամները, որոնք անհելի բարբարոսական ջարդերու զոհ պիտի երթային անխուսափելի կերպով կամ պիտի իսլամանային (Հ. Գ. Այվազովսկի Ա. 345–347)։

Սէլիմ տկարացաւ իր կրօնապետին առջև և ըստ Քուրանի պատուէրին փոխանակ հաւատքի ուրացութեան, քրիստոնեաներէն գլխահարկ առնելու, և ըստ իր հաւուն խոստման, եկեղեցիները մզկիթի չփոխելու և քրիստոնէից պաշտամանց ազատութեան հանդուրժելու զիջումը ըրաւ (Նոյն 346–347)։ Նոյնպէս Սուլթան Իպրահիմ որովհետև Վենետիկցիք արշաւած էին Պելոպոնես և 5000 գերի տարած էին, սաստիկ զայրացած հրամայեց 1648ին կոտորել առհասարակ բոլոր քրիստոնեաները։ Շէյխ իւլ իսլամ Էպուսայիտ չհաստատեց այս վճիռը ըսելով որ գլխահարկէն յայտ է որ միայն Կ. Պոլիս 200.000 քրիստոնեաներ կան Յոյն և Հայ։ Իպրահիմ այն ատեն հրամայեց խնայել իր

(1) Մեծ մասը Թէքքէ գաւառին մէջ կը բնակէին։

(2) 1578ին ալ Պարսիկ վաճառականներու Կ. Պոլսոյ մէջ դիրքին նախանձորդ Մեծ Վէզիր մը, Պարսիկները թրքացնելու հրաման ըրած է (տես Կոչնակ Հայաստանի, 1928, էջ 1516)։



հպատակները և ջարդել Եւրոպացիները, և նախ և առաջ՝ Վենետիկի Պայլը։ Սակայն, վէզիրը, Շէյխ իւլ իսլամը և ուագանին, խնդրեցին և շատ աղաչեցին որ հրաժարի այս սոսկալի գաղափարէն, որուն սարսափէն բոլոր Եւրոպացիք եկեղեցիներ ապաստանած էին (Այվազովսկի, Բ. 110)։

Տեսանք արդէն (տես վերը, 582–586) թէ ինչպէս Ֆաթիհ՝ հազիւ Կեսարիոյ շրջաններուն տիրակալած, 1468էն 1478 հազիւ տասը տարիներու շրջանին պարբերական բռնագաղթով կամ տեղահանութիւններով մեծ թուով Հայեր հեռացուց անկէ, զանոնք իր մայրաքաղաքը փոխադրելու համար և անոնց տեղ ուրիշ տեղերէ՝ հաւանօրէն իսլամներ բերաւ։

Հազիւ հարիւր տարի յետոյ, 1573ին, դարձեալ Կեսարիոյ Հայերը ենթարկուեցան զանգուածային տեղահանութեան մը, տարուելով մեծ թուով Կիպրոս կղզի, որուն Թուրք տիրապետութեան ենթարկուելէն յետոյ հաստատուած Հայ գաղութին նախահայրերը, ինչպէս կ'երեւի Կեսարացիք են։ Կիպրոս գրաւուած էր 1571 Օգոստոս 4–ին Սելիմ Բ.ի ժամանակ և բնակչութիւնը սոսկալի կոտորածի մը ենթարկուած։ Իսկ ողջ մնացողներէն մեծ մասն ալ թրքական լուծին ենթարկուելէն նախամեծար համարած էին փախչիլ այլուր։ Հաւանօրէն դատարկացած այդ գեղեցիկ կղզին չէնցնելու համար, Սուլթան Սէլիմ Բ. 1573ին հրաման կ'արձակէ, որպէսզի Կեսարիոյ ձեռներէց Հայ բնակչութիւնը Կիպրոս փոխադրուի թրքական բացատրութեամբ «սիւրիւլմէք ճէրմաճ օլուճուպ»։

Այս հրամանը, ինչպէս կը տեսնուի ճարտարապետ Սինանին ստացած մէկ հրամանագրէն, խստութեամբ գործադրուած է, այս թուականին։

Հաւանօրէն այս տեսակ ուրիշ բռնագաղթեր ալ կատարուած են և սակայն անոնց վաւերագիրները մեզի անծանօթ մնացած են։

Իսկ կեդրոնի կառավարութեան հրահանգով գործադրուած՝ ջարդեր ալ հաւանական է որ պատահած ըլլան։ Անոնց վերջին բայց ոչ նուազ մէկ բարբարոս նմոյշն էր անշուշտ այն որ Կարմիր Սուլթանը գործադրել տուաւ, Հայկական ջարդերու կարգին, 30 Նոյեմ. 1895ին, ինչպէս արդէն յիշեցի, և այն զարհուրելի սպանդը որ Իթթիհատական կառավարութիւնը գործադրեց, բռնագաղթի ու կոտորածի կրկնակ միջոցները կիրարկելով ընդհանուր պատերազմի միջոցին (1915 Յուլիս) գրեթէ վերջակէտը դնելով Կեսարիոյ Հայութեան կեանքին, ինչպէս պիտի տեսնուի յետոյ։

Կեդրոնական կառավարութիւնը ուրեմն ամէն անգամ որ առիթը ներկայացած է, արտակարգ միջոցներով, աշխատած է լուծել թիւի խնդիրը, ձգտելով բնաջնջել ոչ-իսլամները։

Օսմանեան պետութեան վարիչները, միեւնոյն ատեն օրինական միջոցներ խորհած և գործադրած են առաջ տանելու համար բնաջնջման գործը, յամրաբար և մաս առ մաս։

---

## Գ.

## ԵՆԻՉԷՐԻՈՒԹԻՒՆ

*Առաջինը՝ այն միջոցներուն որոնք օրինական քօղով մը կը ներկայանային, եղած է Թրքական յղացում՝ այն արտակարգ եղանակով զինուորագրութիւնը որ Թուրքերը կիրարկեցին քրիստոնեաներուն համար։ Իբր աննշան փոքրամասնութիւն մը, իրենց թիւը բնաւ ձեռնտու չէր բաւելու բանակին շարքերը լեցնելու և իրենց հպատակներէն ո՛չ մէկուն կրնային վստահիլ, մինչ զինուորի պէտքը անհրաժեշտ էր, քանի որ շարունակ պատերազմի մէջ էին։ Այդ պէտքը լրացնելու որքան հանճարեղ նոյնքան կոպիտ, հնարքը գտաւ Մէվլանա Գարա Խալիլ Ճէնտէրէլի, «դատաւոր զօրաց»* (Այվազովսքի, Ա. 22), *որ խորհուրդ տուաւ Սուլթան Օրխանի* (1326–1359) *և անոր եղբօրը Ալայէտտին փաշային —Օսմ. պետութեան առաջին օրէնսդիրին— որպէսզի նոր գունդեր կազմէ քրիստոնեայ բնակչութեան մանուկներէն, զանոնք իբր տուրք առնելէ և իսլամացնելէ յետոյ։ Սակայն ոմանք կը պնդեն թէ Օրխանի օրով կազմուած նոր բանակը սոսկ իսլամներէ կը բաղկանար, և միայն ունէր բացառիկ կազմ մը, հետեւակ* (փիյատէ) *երկու տեսակ զինուորներով,* աճէմի *(անվարժ) և* պօսթանճի *(պարտիզպան) անունով։ Կարգադրուած էր որ ասոնք թոշակ պիտի ստանային վարձկան զօրքերու պէս, միայն պատերազմներու ատեն, իսկ խաղաղութեան ատեն պիտի պարապէին երկրագործութեամբ և հողի մշակութեամբ, պահելով բանակի կազմը ու կարգ ու սարքը, իրենց տասնապետներով, հարիւրապետներով ու հազարապետներով։*

*Այս բանակը յետոյ, երբ գիտուեցաւ թէ, իր բնակչութեան հետ ունեցած յարաբերութիւններով, զեղծումներու և անկարգութեանց տեղի կու տայ, սա գաղափարը յղացան թէ լաւ է անոնց խառնել,* 1000 *քրիստոնեայ մանուկներ,* Եէնիչէրի *անունով (Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան* Աշխարհ. *Բ. մաս Ե. հտ.* 62–63)*։ Սակայն շատ յըստակ չեն իրողութիւնները և* Եէնիչէրի*ներու ծագումը, վասնզի անոնց կազմութիւնը ոմանք կը կարծեն թէ կատարուած է* 1362*ին Մուրատ Ա.ի իշխանութեան* (1359–1389) *ատեն երբ իբր թէ Գարամանցի Դանիշմէնտ (=ուսուցիչ) մը՝ Թիւրք Գարա Րիւսթէմ, խրատ կու տայ Գազասկէր Գարա Խալիլի (յետոյ վէզիր Խայրէտտին փաշա), իբր օրինաւոր ու արդար գործ, զինուորութեան առնել քրիստոնեայ գերիներէն հինգէն մէկը։ Գազասկէրը նոյնը կը թելադրէ Մուրատ Ա.ի, որ կը համոզուի և հրաման կ'ընէ որ Գարա Րիւսթէմ Կէլիպօլու հաստատուի, իրեն հետ ունենալով յատուկ դատաւորներ —որոնք կը կոչուէին* Ազըմի Գաւըրլէրի*— և անոնց հսկողութեամբ* 25 *փող առնուի արձակուած գերիներէն և հինգ գերիներէն մին ընտրութեամբ՝ առնուի զինուոր (Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան,* Ցոյց 62)*։ Այսպէս հաւաքուեցան բազմաթիւ երիտասարդներ և ղրկուեցան Սուլթանին։*

*Գարա Խալիլ հրաման ըրաւ զանոնք կրթել Մահմետական կրօնքով, կամ այլապէս ըսելով՝ բռնի իսլամացուց։ Սակայն այս կերպով խելահասներէ առնուած զօրքը վստահելի չէր, ուստի* 1000*էն աւելի չառնըւեցաւ՝ նախապէս։ Յետոյ, երբ տարեկան* 1000 *հոգի գերիներէն առնել*



*կարելի չեղաւ, հպատակ քրիստոնեաներու զաւակներով այս թիւը լեցնելու գաղափարը յղացուեցաւ, և այսպէս սկսաւ այս անողոք մարդահարկը, որով քրիստոնեայ արու ծնունդներուն տասնէն մէկը կ'առնուէր բռնի։ Այս կարգադրութեամբ երկու նպատակ միանգամայն հետապնդուած կ'ըլլար, թէ՛ կ'ստեղծուէր կայուն բանակ մը և թէ՛ հպատակները մաս առ մաս կ'իսլամանային։ Այս փափաքը հետզհետէ անոնց թիւը ստուարացուց։ Ֆաթիհի ատեն* (1451–1481) *անոնց թիւը* 12,000 *էր, Սիւլէյման Գանունիի* (1520–1566) *ատեն՝* 20,000 (Այվազովսքի, *Ա.* 23. *և* Ուղեգ. *Զ.* 294), *Մուրատ Գ.ի* (1574–1595) *ատեն՝* 60,000, *Մէհէմմէտ Գ.ի* (1595–1603) *ատեն՝* 101,600 *և Մէհէմմէտ Դ.ի* (1649–1687) *իշխանութեան առաջին տարիները անոնց թիւը հասաւ* 200,000*ի*(1) (Jonquière *Ա.* 413)։

1652*ին, Մեծ Վէզիր Թէրխունճի Ահմէտ փաշա, փորձեց բնականոն համեմատութեան մը իջեցնել Եէնիչէրիներու թիւը, և* 55,000 *անձ սահմանեց, բայց վերակազմուած զինուորներուն ապստամբութիւնը ստիպեց Մուրատ փաշան* (1655) *այս թիւը կրկնապատկել։*

*Առաջին Սուլթանը որ յղացած է իր քրիստոնեայ հպատակներուն* 10 *արու մանուկներէն մին իբր մարդահարկ առնել և զինուորագրել, եղած է իր մոլեռանդութեամբ և անգթութեամբ հռչակաւոր՝ Սելիմ Եաւուզ* (1512–1520), *ըստ Երեմիա Քէօմիւրճեանի և Առաքել Դաւրիժեցիի։*

*Այս մարդահարկը որ կը կոչուէր* Տէվշիրմէ *(հաւաքոյթ) և մեր նախնիքներէն՝* մանկաժողով, *սաստկութեամբ գործադրուած է նախ* 1517*ին Սելիմի հրամանով, որ* 1519*ին ալ կատարեց* Տէվշիրմէ *մը, ահ ու սարսափ պատճառելով իր քրիստոնեայ հպատակներուն, որոնք այս անգութ կարգադրութեան առջև սահմռկած էին. Սիւլէյման Գանունի* (1520–1566) *երբ յաջորդեց Սելիմի, պահ մը դադրեցուց այս դժպատեհ սովորութիւնը, սակայն ըստ Երեմիա Չէլէպիի* 1531*ին և* 1549*ին երկու անգամ ինքն ալ կիրարկեց մանկաժողովի դրութեամբ զինուոր հաւաքելու մեթոտը։ Օտար պատմիչներ կ'ըսեն թէ Սիւլէյման Գանունի երբ Պարսից արշաւանքէն դարձաւ* 1535*ին, իր բանակը նոր տարրերով զօրացնելու համար, իր Վէզիրին՝ Իպրահիմ փաշայի խորհուրդով վերահաստատեց այս սովորութիւնը աւելի կազմակերպեալ և աւելի բուռն կերպով։ Հրաման ըրաւ պզտիկ տղաքները հաւաքել ամէն կողմէն և ամէն ազգէն և զանոնք զինուորական կեանքին մարզել։ Ասոնք կը կրթուէին իսլամական կրօնքով և կ'ստուարացնէին թրքութիւնը ի վնաս քրիստոնեաներուն։ Երեք դարերու ընթացքին աւելի քան* 500.000 *քրիստոնեայ մանուկներ առնուած են այս եղանակով իբր* Եէնիչէրի *(Յ. Յակոբեան,* Ուղեգր. *Զ.* 294)*։ Առաջ արգիլուած էր անոնց ամուսնանալ, բայց ԺԶ. դարուն արտօնուեցան, պայմանով որ իրենց զաւակները Եէնիչէրի չըլլան (Յ. Յակոբեան,* Ուղեգր. *Զ.* 294), *որպէսզի նոր* Տէվշիրմէ*ներու առիթը չպակսի, և զինուորականութիւնը և անոր առանձնաշնորհները որոշ ընտանիքներու մենաշնորհը չըլլայ յորդւոց որդի։ Այս դժոխային հարկին դէմ մաքառեցան քրիստոնեայք և ամէն ջանք ըրին զայն խափանելու, սակայն*

---

(1) *Այվազովսքի (Ա.* 23) *այս Սուլթանին օրով,* 40,000 *կը նշանակէ։*

միայն մասնակի յաջողութիւններ ունեցան, վասնզի մանկաժողովը շարունակուեցաւ կատաղօրէն, միայն մասնաւոր շրջանակներու համար բացառութիւններով, ան ալ դրամական հատուցման մը գինով, որ սկիզբը կը նկատուի Պէտէյր Ասկէրիյէին (Զինուորական փրկանք)։

Այսպէս Տէվշէրմէի դրութեամբ զինուորագրուած քրիստոնեաները, Եէնիչէրի օճախներու մէջ՝ դաստիարակուած մահմետական կրօնքով, դարձան մոլեռանդ իսլամներ, և մինչև ԺԸ. դարուն սկիզբը, ամէն տարի ստուարացուցին Թուրք զանգուածը, ինչպէս պետութեան ամէն կողմերը նաև Արգէոսի շուրջը։

Իրաւ է թէ յետոյ բոլորովին լքուեցաւ քրիստոնեաները զինուորագրելու այս դրութիւնը, սակայն շարքերը լեցնելու համար ընդունուած եղանակը ոչ նուազ աղէտաբեր եղաւ երկրին քրիստոնեայ բնակչութեան, վասնզի բան մը որմէ զգուշացեր էին նախապէս, պատահեցաւ։ Եէնիչէրիներու զաւակները և ազգականները նախապատուութիւն ստացան (Jonquière Ա. 413) և այսպէս առաջ եկաւ սերնդական զինուորութիւն մը։ Յետոյ Եէնիչէրի գունդերու մէջ ընդունուեցան ամէն դասէ և ամէն ազգէ և կրօնքէ մարդիկ, նոյնիսկ թափառաշրջիկներ և աւազակներ, բացի սեւամորթերէ՝ որոնք երբեք չընդունուեցան։ Այնպէս որ քրիստոնեաներ ալ զինուորագրուեցան այս գունդերուն, պարզապէս օգտուելու համար անոնց առանձնաշնորհներէն և անպատիժ գործադրած կողոպուտէն և կեղեքումներէն։ Ասկէ յետոյ է որ այս գունդերը դարձան ամէն տեսակ անկարգութեանց աղբիւր և պատճառ քայքայումի (Նոյն, 413)։

Այս կամաւոր Եէնիչէրիները, անշուշտ աւելի ազատ և աւելի անկաշկանդ գործելու համար, իսլամացան։

Դ.

## ՀԱՐԿԱՊԱՀԱՆՋՈՒԹԻՒՆ

Իսլամացման առաջնորդող օրինական ուղի մըն էր նաև հարկը կամ տուրքը։

Գլխահարկը պարտաւոր էր ամէն ոչ-իսլամ վճարել որպէսզի կարենար ապրիլ իսլամ երկրի մէջ։ Այս հարկը քրիստոնէային կեանքին գինն էր գրեթէ, վասնզի երբ Օսմ. բանակներ երկիր մը գրաւէին բնակչութիւնը եթէ չկոտորէին կամ գերի չվարէին և ստացուածքները չգրաւէին, կը սահմանէին հարկ մը, որ եթէ չվճարուէր իսլամը ազատ էր այլակրօնը ջարդելու։

Ոչ-իսլամներէն գանձուած այդ հարկը կ'առնուէր քանի մը բաժանումներով։ Ամէն անհատ պէտք էր վճարեր Ճէզիյէ անուն տուրք մը, որ երկու տեսակ էր։

1. Մաքթու (անփոփոխ) Ճէզիյէ որ երկիր մը գրաւուած ժամանակ մարդ գլուխ որոշուած տուրքն է։

2. Ալէյրուուս (առհասարակ մարդ գլուխ) Ճէզիյէ որ համեմատական էր և մարդուն կարողութեան համեմատ կ'առնուէր։ Նախապէս հարուստներէն կ'առնէին 48 դրամ արծաթ, էսնաֆներէն 24 դրամ, և աղքատներէն՝ 12 դրամ, կամ 1 դրամ արծաթը մէկ ղրուշի հաշուով առնոր գինը կ'առնէին, սակայն Սիւլէյման Գանունիի Մեծ վէզիրը Քէօփրիւլի զատէ Ֆազըլ կամ Շէհիտ Մուսթաֆա փաշա, հարկերը դիւրաւ հաւաքելու համար, ամէն տարուան համար առանձին գոյնով ընկալագիրներ սահմանեց և հարուստներէն՝ 4, էսնաֆներէն՝ 2 և աղքատներէն՝ 1 շէրէֆլի ոսկի առնել որոշեց(1) (տես Հ. Ղուկաս Ինճիճեան, Աշխարհագրութիւն, Բ. մաս, հտ. Ե. 46–47)։ Ասկէ զատ հարկահան, պաշտօնեան երեք դասակարգերէն, յաւելուածաբար պիտի հաւաք 10, 8 և 4 փարա (Նոյն)։

Ասկէ զատ իւրաքանչիւր ոչ-մահմետական պիտի վճարէր իր ստացուածքներուն համար ալ տուրք մը որ Խարաճ կը կոչուէր, և նոյնպէս երկու տեսակ էր.

1. Խարաճը Մուվազզաֆ (պարտաւորիչ) որ «ճէրիպ» կամ «տէօնիւմ» (արտավար) գլուխ տարեկան հարկ էր, և անփոփոխ է։

2. Խարաճը Մուգասիմ (բաժանելի) որ հողին արտադրութեան վրայ դրուած տարեկան հարկ էր և փոփոխելի։

Իսկ այն ոչ-իսլամները որոնք երկրագործական աշխատութեամբ չէին պարապեր և ուրիշ միջոցներով դրամ կը շահէին՝ ազատ չէին տուրքէ, այլ կը վճարէին զանազան տուրքեր, ինչպէս

1. Րէսմի Միւճէրրէտ (ամուրիական տուրք)։
2. Րէսմի Բայէէք (հպատակութեան տուրք)։
3. Րէսմի Պինաք (արտաւորի » )։
4. Րէսմի Պասիհասխա } (ձրի, անարգել դրամ վաստկողներու տուրք)։
5. Ճապա Ագչէսի }

Բաւական է աչքէ անցնել Սուլթան Սիւլէյմանի «Գանունի Րայեա» կոչուած օրինագիրքին մէջ նշանակուած հարկերը, որպէսզի կարելի ըլլայ գաղափար մը կազմել թէ քանի կաշիներ կը քերթէին քրիստոնեաներէն։

Ասոնց տեսակները հետզհետէ աւելի բազմացան և առին անտանելի համեմատութիւն մը (տես Գ. Հնասէր, ԲԶՄՊ. 1934, 31–36. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, Բ. մաս, հտ. Ե. 46)։

Ալպանացի Քուչի կամ Խօչի պէյ, Մուրատ Դ.ի (1631–1640) խորհրդականը, և առաջին Թուրք պետական անձը, որ հիմնական բարենորոգմանց պէտքը զգացուցած է, Թուրքիոյ վիճակին վրայ 1630ին իր վեհապետին մատուցած մէկ պատմական զեկուցագրին (Րիսալէ) մէջ կ'ըսէ թէ «40 կամ 50 ասպէրի (= ստակ որուն Ագճէ կ'ըսէին Թուրքերը) փոխարէն որ կ'ասացուէր իւրաքանչիւր տունէ, գիւղացին այժմ կու տան 240 ասպէր գլխահարկ, 40 ասպէր անուղղակի տուրքերու փոխարէն գիւղացիներէն այժմ կ'առնուէին 300, իսկ իւրաքանչիւր ոչխարէն՝ կէս ասպէրին փոխարէն կ'առնուի 7 կամ 8 ասպէր...» (Լէօ, Հայ Տպագր. Պատմ. Ա. հտ. 201)։

Մասնաւորապէս տուրքերու գանձման եղանակը այնքան դաժան ու անողոք էր, որ շատեր իսլամանալով անոնցմէ ազատիլ կը նաւ-

(1) Գ. Հնասէր (Բազմավէպ, 1934, էջ 33) սխալմամբ շէրէֆլի ոսկին «արծաթ տիրէմ» նշանակած է որչափ կը կարծեմ, ինչ որ հաւանական չէ։ Տես նաև Այվազովսքի, Օսմ. Պատմ. Բ. էջ 211, որ 4, 2, 1 ոսկի կը նշանակէ այս տուրքին քանակը որ իբր Նիզամի Ճէտիտ սահմանած է Քէօփրիւլիւ Մուսթաֆա փաշա։

խընդրէին, մանաւանդ որ ջարդի սպառնալիքն ալ կար իրենց գլխուն վրայ երբ տուրքը չվճարէին։ Ուստի Թուրքերը որ սխալ ըմբռնած էին դժբախտաբար մահմէտական կրօնքին ոգին, և կրօնական պարտականութիւն մը կը նկատէին այլակրօնները կեղեքելը, ջարդելու կամ իսլամութեան հարկադրելու համար քրիստոնեաները, յաճախ տուրքին քանակը կը բարձրացնէին այնպիսի համեմատութեան մը որ վճարումը անկարելի ըլլար և ոչ-իսլամը պարտաւորուէր ջարդուելու վտանգէն ազատելու համար իսլամութիւնը ընդունիլ (հմմտ. Դարանաղցի, 511)։

Նկատելի է որ բացի պաշտօնապէս սահմանուած պետական հարկերէն, կ'առնուէին նաև ռայեաներէն ամէն ինչ որ կարելի է առնել։

Առնողը միայն կառավարութիւնը չէր, այլ ամէն ազդեցիկ ու զօրաւոր մարդ, տեղական իշխանաւոր։ Անհաւատ կեավուրին սեփականութիւնը կը պատկանէր մուսլիմանին։ Նոյնիսկ մարդուն ամէնէն նուիրական սրբութիւնը՝ ընտանիքը՝ կեավուրին անկողոպտելի սեփականութիւնը չէր։ Ինչ որ գեղեցիկ էր ու թարմ, կը պատկանէր տիրոջին։ Կատարեալ դժբախտութիւն մըն էր գեղեցիկ տղայ կամ աղջիկ ունենալը։

Ասիկա անօրինակ կեղեքում մըն էր որ ի գործ կը դրուէր յանուն իսլամութեան, վասնզի իսլամը համոզուած թէ ազատ էր և պէտք էր առնէր, իբր իրաւունք կամ տուրք, ինչ որ կրնար առնել ոչ-իսլամէն։ Եւ ոչ-իսլամը հարկադրուած էր հլուութեամբ տալ ինչ որ կը պահանջուէր իրմէ, քանի որ ո՛չ տէր ունէր և ո՛չ ալ տիրական և Թուրքիա ամենազօր պետութիւն մըն էր որուն առջև կը դողային եւրոպական և ասիական պետութիւններ։

Հետեւաբար, քրիստոնեայք օրինաւոր հարկապահանջութեան մը անունով, ենթարկուած էին այնպիսի հարստահարութեանց և կեղեքումներու, որոնք երբեք տեղի ունեցած չէին ո՛չ մէկ երկիրի և ո՛չ մէկ պետութեան մէջ, և հարկադրուած, ինչպէս զինուորագրութեան օրէնքով կատարուած մանկաժողովներու պատճառով, նոյնպէս նաև տուրքերու անտանելիութեան հետեւանօք, իսլամանալու, այս անգամ երեւութապէս կամաւոր, բայց գրեթէ նոյնքան բռնի կերպով։

Ե.

## ՀԱՒԱՔԱԿԱՆՕՐԷՆ ՄԱՀՄԵՏԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԴԻՄՈՂՆԵՐ

Զինուորական օրէնքով և տուրքերու պատճառով, մահմետականացածներէն զատ, ինչպէս ամէն ուրեք, նոյնպէս նաև Կեսարիոյ մէջ, բռնադատութիւններով և սպառնալիքներով, իսլամացողներ գտնուած են։

Մասնաւորապէս հողատէր իսլամներ, իրենց հողերուն վրայ հաստատուած գիւղացի երկրագործները, կամ զանազան բռնակալ աղաներ, գիւղերը՝ իրենց ամբողջ բնակչութեամբ՝ իսլամութիւնը ընդունելու հարկադրած են։

Անատոլուի մէկ ծայրէն միւսը բազմաթիւ գիւղեր կային որոնք կը կրէին հայկական անուններ և հայատիպ բնակչութիւն որ իսլամ



էր և յաճախ աւանդաբար գիտէր իր Հայ ծագումը։ Արգէոսի շուրջն ալ կը գտնուէին այնպիսի վայրեր որոնք մասամբ կամ ամբողջութեամբ իսլամացած էին։ Ասոնցմէ յիշենք մասնաւորապէս Սպիլիա կամ Իսպիլիա գիւղը՝ Թալասի արեւելեան կողմը, որ հայաբնակ էր 1511–1535 թուականներուն, ըստ հոն գրչագրուած 1511 և 1535 թուականով երկու ձեռագիրներու, մին Աւետարան (Հալէպի Ս. Քառասուն Մանկունք եկեղեցին) և միւսը՝ Մաշտոց (Ս. Էջմիածնայ Մատենադարան)։ Այդ ձեռագիրներէն կը հասկցուի թէ այս գիւղը ունէր եկեղեցիներ՝ նուիրուած Ս. Աստուածածնի և Ս. Թէոդորոս զինուորին։

Հոն ծաղկած է Ներսէս գրիչ որ աշակերտն էր Յովհաննէս Նաղաշի և եղբայրն՝ Աստուածատուր եպ.ի։ Իր գրած Աւետարանը գնած է Յովհաննէս Թլկուրանցի Կիլիկիոյ կաթողիկոսը և նուիրած է Հալէպի եկեղեցւոյն։ Արդ, այդ գիւղը գոյութիւն ունէր, սակայն վաղուց դադրած էր հայաբնակ ըլլալէ և Հայ եկեղեցիի և հայկական ոեւէ յիշատակարանի մնացորդ գոյութիւն չունէր հոն։

Ուրիշ ձեռագիրի մը մէջ (1661ին գրուած յայսմաւուրք մը, որ պահուած էր Տարսիախ գիւղի Ս. Անդրէաս եկեղեցին) ցուցակ մը կար օտար գրչէ, որ կը թուէր իւրաքանչիւր գիւղի պտղիին քանակը։

Այս շարքին մէջ կը յիշուի նաև Ըսպրսան անուն գիւղ մը որուն համար Տրդատ եպ. Պալեան ծանօթագրած է թէ «Ըսպրսան գիւղը կայ բայց այժմ հայաբնակ չէ»:

Արդարև գոյութիւն ունէր Իսպրսըն կամ Սպրնսըն անուն թրքաբնակ գիւղ մը Մունճուսունի հիւսիս-արեւելեան կողմը, վաղուց դադրած հայաբնակ ըլլալէ։

Նոյնպէս Ջիւոյի անուն գ՛իւղը, որ կը գտնուէր «ի գաւառիս Ծամընդոյ», ըստ 1532ին գրուած Մաշտոցի մը (պահուած Պալակէսիի Ս. Խաչ եկեղեցին) յիշատակարանին, ունէր Ս. Սիօն անուն եկեղեցի մը։ Հայաբնակ այս անունով գիւղ գոյութիւն չունէր վերջերը, որով կրնանք ըսել թէ այս գիւղն ալ թրքական բռնութեանց հետեւանօք Հայ բնակչութենէ դատարկացած է։

Կասի որ այսօր ալ գոյութիւն ունի և մայրը կը համարուի Պալակասիի (իբր Նոր Կասի) երբեմն եղած է հայաբնակ ինչպէս կը հաստատէ առձեռն շարականի մը ձեռագիրը որ 1597ին այդ գիւղին մէջ գրուած է (այժմ պահուած Երուսաղէմի Ս. Յակոբեանց թանգարանը) «ընդ հովանեաւ սրբոյս որ զանուանն չգիտեմ»։

Ուրեմն գիւղը ունէր եկեղեցի մը որուն անունը չէր գիտեր գրիչը, որ իր ձեռագիրը գրած էր Բօշայ Խոտան անուն անձի մը համար։

Նշանաւոր ճարտարապետ Գոճա Սինանին իր ազգականները աքսորէ փրկող հրամանագիրը որ 1573 թուականին ստացուած է, կը հաստատէ թէ Աղրնաս գիւղը որ իր ծննդավայրն էր և որ մինչև հիմա ալ գոյութիւն ունի, երբեմն հայաբնակ եղած է, և տակաւին 1573ին կը պահէր իր Հայ բնակչութիւնը, որմէ կ'ուզէր ազատել իր ազգականները Նշանաւոր ճարտարապետը (տես Սիմոն Գաբամաճեանի Գոյպանի Տարեցոյց, 1932, էջ 205)։

Նոյն պաշտօնագիրին մէջ կը յիշուին Քիւչիւք Պիւրիւնկիւզ որուն բնակչութիւնը համանուն Պէօյիւք Պիւրիւնկիւզ անուն գիւղին բնակչութեան հետ վաղուց իսլամացած են, և երկար ատենէ ի վեր Հայ

բնակչութիւն չունին, մինչ Սինանի տրուած պաշտօնագիրը կը հաստատէ թէ գոնէ Քիւչիւք Պիւրիւնկիւզի մէջ Սինան ունէր Հայ ազգականներ։

Պ. Պիմէն Ջարդարեան (Նոյն, 295) այս գիւղերուն բնակչութեան համար կ'ըսէ թէ Կեսարացիք աւանդաբար գիտեն թէ իսլամացած Հայեր էին։

Նոյնպէս այդ պաշտօնագիրը կը յիշատակէ Իւրկիւպ գիւղը ուր այդ թուականին ունէր Սինան Գալֆա Հայ ազգականներ։

Ինչպէս յայտնի է Իւրկիւպ նոյնպէս շատոնց դադրած է հայաբնակ վայր մը ըլլալէ, հաւանօրէն Հայ բնակչութեան բռնութեան տակ իսլամանալուն կամ սաստ անդ ցրուելուն պատճառով։

Ցիշենք նաև Գրիգորիս անուն գիւղը որուն դեռ մինչև 1736 հայաբնակ ըլլալը գիտենք Երուսաղէմի մէջ կանգնուած խաչ քարի մը արձանագրութենէն (տես Տիգրան Հ. Թ. Սաւալանեանց, Պատմութիւն Երուսաղէմի, Բ. 1231)։

## Գ.

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՈՒ ՄԱՍՆԱԿԻ ԻՍԼԱՄԱՑՈՒՄՆԵՐ

Զանգուածային կերպով իսլամացող համայնքներէն զատ, անխուսափելի էր որ բռնութեամբ և հարկադրանքով անհատներն ալ իսլամութեան յարած ըլլան։ Ասոր համար առիթներ ու պատրուակներ ստեղծել գիտէին Թուրքերը, որոնք յաճախ զրպարտութիւններով կ'ամբաստանէին քրիստոնեան, և յետոյ անոր կեանքը փրկելու համար իսլամութիւնը կ'առաջարկէին։ Յետոյ պէտք չէ մոռնալ թէ իսլամութիւնը պետական կրօնքն էր և հետեւաբար առանձնաշնորհեալ, պաշտպանեալ և անխոցելի։ Բոլոր ոչ-իսլամները՝ սուտ կամ իրաւ պատրուակներով, մեղմութեամբ և բռնութեամբ կրնային իսլամանալ, սակայն ոչ մէկ իսլամ կրնար իր կրօնքը թողուլ։ Այս տեսակ յանդգնութիւն մը մահուամբ կը պատժուէր։ Հետեւաբար իսլամները յաճախ քրիստոնեաներու բերանը իսլամութիւնը ընդունած ըլլալու յայտարարութիւն մը կը դնէին և ապա քրիստոնեայ մնալը աններելի հռչակելով կը պահանջէին որ իսլամական պարտականութիւնները կատարէ։ Համակերպողը կ'ազատէր, իսկ իր քրիստոնէութեան վրայ պնդողը կ'սպաննուէր։ Ասիկա գեղեցիկ զէնք մը եղած էր իսլամներու համար քրիստոնեաները բռնի իսլամացնելու, վասնզի երկու սուտ վկայ բաւական էր մարդու մը համար ըսելու թէ իսլամութիւնը ընդունած է, որպէսզի խուժանը յետոյ պահանջէր անոր իսլամացումը կամ եթէ ոչ՝ մահը։

Կեսարիա այս կերպով ապահովաբար ամէնէն շատ տուժող վայրերէն մէկը եղած է։ Անկարելի է որ Թուրք մոլեռանդութեան և բարբարոսութեան ամէնէն գլխաւոր կեդրոնավայրերէն մէկը հանդիսացող Կեսարիոյ դաժան Թուրքերը փորձած չըլլան այս ձեւով բռնի իսլամացնելու Հայ անհատներ։

Այս ակամայ ու բռնական եղանակով իսլամացողներու քով, պակաս չէին, միշտ քիչ շատ թուով ուրիշներ, որոնք ինքնաբերաբար կը յարէին իսլամութեան, զանազան շարժառիթներով։



Գլխաւոր հրապոյրը որ իսլամութիւնը կ'ընծայէր քրիստոնեային, այն առանձնաշնորհներն էին որոնք իսլամները կը վայելէին երկրին մէջ, մասնաւորապէս տնտեսական գետնի վրայ։

Շատեր մահմետական եղած են որպէսզի ազատին քրիստոնեաներու յատուկ հարկերէն և հասնին փառքի և իշխանութեան, և ուրիշներ, անկորուստ պահելու համար իրենց ճակտին քրտինքով ձեռք բերած հարստութիւնը, նամանաւանդ ազատելու համար զայն յափշտակիչներէ, որոնցմով լի էր երկիրը և իբր իսլամ անոնք հազար ու մէկ հնարքներ ունէին իրենց դրացիներուն գոյքը և ստացուածքը իւրացնելու։

Օրինական աւազակութեան պարզագոյն մէկ ձեւն էր իսլամանալ ժառանգելու համար իր քրիստոնեայ ազգականին բոլոր կալուածները, ըստ Շէրա'աթին, որ միայն իսլամացող ժառանգորդին կը սեփականէր իր անհաւատ ազգականին թողօնը, այլամերժօրէն զրկելով բոլոր միւս ժառանգորդները։

Մահմետականութիւնը քաջալերելու համար շատ լաւ միջոց մըն էր այս դրութիւնը, վասնզի շատեր իսլամութիւնը ընդունելով կը կողոպտէին նոյնիսկ անծանօթ ընտանիքներու կալուածները անոնց ժառանգ հռչակելով ինքզինքնին, ինչ որ այնքան դիւրին էր եթէ երկու մահմետական վկայէին իր պնդածը։ Այնպէս որ զաւակներուն և ընտանիքին ապահովութեան համար փոքրիկ հարստութիւն մը ձգելու ազատութիւնը իսկ չունէր քրիստոնեայ մը, եթէ իսլամութեան չյարէր։

Աննշան չէին նաև ուրիշ առանձնաշնորհներն, որոնք իսլամները իբր տիրող տարր, կը վայելէին։ Ասոնք ամէնն ալ խայծեր էին որպէսզի շատեր, մասնակից և բաժնեկից ըլլալու համար, այդ մասնաւոր առաւելութիւններուն իրենք ալ տկարութիւնը ունենային իսլամութեան յարելու։ Թուրքերը տեսնելով որ այն խտրականութիւնները որոնք իսլամին և քրիստոնեային միջեւ դրուած էին, խայծեր կը դառնային դէպի իսլամացում և թրքացում առաջնորդելու համար քրիստոնեաները, օրէ օր աւելի զգալի դարձուցին իրենց առաւելութիւնները կամ զանոնք աւելի ընդարձակեցին։

Այսպէս, օրինաւոր և ապօրէն, ամէն միջոցներով քրիստոնեաները իսլամացնել աշխատեցան, և պէտք է ըսել թէ յաջողեցան վասնզի ժԷ. դարուն Թավեռնիյէի ներկայացուցած պատկերը, ո՛չ շատ յետոյ, արդէն եղծուած էր և Անատոլուի բնակչութիւնը ԺԸ. դարէն սկսեալ մեծամասնութեամբ իսլամ դարձած էր։

Մասնաւորապէս այս հոսանքը չեչտուած է ԺԷ. դարուն, ուր Յոյներ, Ալպանացիներ, Սերպեր և Պուլկարներ մեծ թուով իսլամացած են Ռումելիի մէջ։

Հայերն ալ պետութեան Ասիական բաժնին մէջ նոյն տկարութիւնը ունեցած են, չկրնալով տոկալ անհարկու հալածանքներուն, զրկանքներուն, տառապանքներուն և հարստահարութեանց, կամ փորձութեանը՝ այն դիւրատար կեանքի հեռապատկերին՝ որ կը կարծէին թէ կրօնափոխութիւնը իրենց պիտի բերէր։

Տրուած ըլլալով ընդհանրապէս Հայերու և յայտ մասնաւորապէս Կեսարացի Հայերու, նիւթական միջոցներու ընծայած մեծ կարեւորութիւնը, դրամասիրութիւնը՝ արծաթապաշտութեան մօտեցող, և հա-

*ըմբոստութեան իղձը՝ ընչաքաղցութեան սահմաններուն հասնող, շատ դիւրին է ենթադրել թէ պիտի գտնուէին միշտ սակաւաթիւ Հայեր որոնք իրենց նիւթական բարեկեցկութեան զոհէին իրենց հաւատքը, և նախընտրէին հարուստ ապրիլ մահմետականութեան մէջ քան թէ աղքատ՝ իրենց պապենական հաւատքին մէջ։*

*Մասնաւորապէս երբ մտաբերենք այն անտանելի տանջանքները և զրկանքները որոնց յանձնառու եղած են անոնք իրենց ապագայ մը ապահովելու համար և այն կէս-անօթի և կէս-կուշտ տաժանքները, որոնց ինքզինքնին ենթարկած են, խնայողութիւններով՝ բախտ մը կերտելու համար, շատ դիւրին է հասկնալ թէ, երբ այդ իսկապէս ճակտի քրտինքով կառուցուած շէնքերու փլուզումը՝ այսինքն անոնց իրենց դրացիներէն անաշխատ յափշտակութեան սպառնալիքը տեսած և իրենց այնքան տառապանքներուն արդիւնքն վայելելէ զրկուելու հեռապատկերը ունեցած են, իրենց աչքին առջեւ, փորձըւած են և հաւատափոխութեամբ իրենց հարստութիւնը փրկելու տկարութիւնը ունեցած՝ հաւանաբար։ Նոյնպէս այն գրեթէ բնազդական իղձը, որ առհասարակ Կեսարացիք ունին, հարստանալու համար, —որ իրենցմէ շատերուն միակ խանդավառող իտէալն է— կրնայ եղած ըլլալ պատճառ տկարութեան, մանաւանդ այնպիսի մարդոց համար որոնք հարստութեան իրենց իղձին մէջ ձախողած՝ աղքատութեան տուայտանքներուն մատնուած են և իսլամանալով կարծած են թէ պիտի փրկուին աղքատութենէ։*

*Նոյնպէս պէտք չէ անտեսել սա պարագան թէ Կեսարացի Հայը առհասարակ օժտուած է նախաձեռնող ոգիով և յանդգնութեամբ, որ մինչև բախտախնդրութեան և արկածախնդրութեան կը հասնի։*

*Կարելի՞ է որ իրենցմէ ոմանք չփորձուէին նետուելու արկածախնդրութիւններու մէջ, փառքի ու իշխանութեան հասնելու կամ իրենց բախտ ու դիրք շինելու համար։*

*Արդարև որքան Վէզիրներ և պատմական նշանաւոր դէմքեր անյայտութեան մէջ կորսուած պիտի ըլլային եթէ իսլամացած չըլլային, քանի որ ոչ-իսլամներու առջև մինչև* 1839, *բացարձակապէս փակ էին պետական պաշտօնները։ Հետեւաբար բոլոր անոնք որ զինուորական և քաղաքային ասպարէզներու մէջ նետուելու փափաքը ունեցած են իսլամութիւնը ընդգրկած են։ Արդարև Օսմ. պետութեան պաշտօնատարներուն մէջ ամէնէն կառկառուն դէմքերը առհասարակ իսլամա-ցած* ռաեաները *կամ անոնց զաւակներն են։ Կեսարացի Հայերէն ալ ապահովաբար գտնուած են անձեր, որոնք իսլամացած են այս տեսակ բախտախնդրութեամբ մը։ Դժբախտաբար պատմութիւնը չափազանց ժլատ է այս մասին մեզի փաստեր հայթայթելու, թէև ասիկա չի կըրնար ապացոյց մը նկատուիլ թէ բռնի կամ յօժար կամօք իսլամացողներ չեն եղած Կեսարիոյ մէջ, երբ այնքան կարկառուն փաստը ունինք իսլամացած Հայ գիւղերու և Օսմ. պատմութեան մէջ՝ յիշատակութիւնը՝ Կեսարացի իսլամացած Հայերու, ինչպէս նշանաւոր ճարտարապետ Սինանի և հռչակաւոր Վէզիր և ծովակալ Կեսարացի Խալիլ փաշայի, որոնք թանկագին և անփոխարինելի ծառայութիւններ մատուցած են Օսմ. պետութեան։*

*Անշուշտ պատմութենէն ծանօթ այս երկու անձերէն զատ, բազմաթիւ են ուրիշներ, որոնք կա՛մ այնքան կարեւոր դիրքերու հասած չեն,*



*կամ իրենց ծնունդը կամ ծագումը, ոեւէ կերպով յայտնուած չըլլալով —ինչպէս էր Սինանին համար դեռ վերջերս— գէթ ինծի անծանօթ կը մնան։ Սակայն ասիկա պատճառ մը չէ որ չենթադրենք թէ Սինանի և Խալիլ փաշայի պէս երեւելիներու շարքին նաև ուրիշ բազմաթիւ աննշան ու անարժէք իսլամացող Հայեր գտնուած չեն, դժբախտաբար պատմութեան էջերէն դուրս մնացած, կամ անյիշատակ, ուրիշ հազարաւորներուն հետ, որոնք զանազան ձեւերով թրքացած են։ Եւ հոն ուր Օսմ. տիրապետութեան սկիզբը Հայը և Յոյնը մեծամասնութիւն մը կը կազմէին, մինչև* 1850*ական թուականները արդէն անհետացած էր քրիստոնեան, մասնաւորապէս Հայը, և փոքրամասնութեան մը վերածուած, և սակայն դեռ իր գոյութեան չէին հանդուրժեր։*

## Է.

## ԳԱՂԹՈՂՆԵՐ ԵՒ ՓԱԽՉՈՂՆԵՐ

*Անջիտումը՝ որուն կ'ենթարկուէր Հայ ազգը Արգէոսի շուրջը ո՛չ միայն հետեւանքն էր այն մոլեռանդական ատելութեան որ կը սնուցանէին Թուրքերը, ընդդէմ իրենց ոչ-իսլամ հպատակներուն, որոնց թիւը պակսեցնել կ'ուզէին, այլ նաև հետեւանքն էր երկրին ընդհանուր վիճակին, և թրքական վարչութեան յոռի կազմին, որ ոչ նուազ աղէտալի արդիւնքներ ունեցած է։ Թուրք ապիկար վարչութեան պատճառով, ստեղծուած է այնպիսի վիճակ մը որ շատեր ինքնակամ հեռացած են իրենց հայրենի հողերէն և եղած են վայրկեաններ, որ Կեսարիա և շրջակայքը, քաղաքական անցքերու բերմամբ գրեթէ դատարկացած է։*

*Արդէն յիշեցի (տես վերը, էջ* 610) *թէ Մուրատ Դ.* 1635*ին Պաղտատ արշաւանք կատարած ատեն Տէվէլի Գարա-Հիսար բանակած միջոցին, բոլոր երկիրը անբնակ ու ամայի գտնալով, Կ. Պոլիս ապաստանող գաղթականները վերադարձնելու հրաման արձակած էր։*

*Այս ամայութիւնը և դատարկութիւնը ուղղակի հետեւանքն էր Ճելալի աւազակներու պատճառած աղէտին Փոքր Ասիոյ մէջ* (1590–1610) (*տես դարձեալ վերը* 601–609)։ *Այդ դառն օրերուն շատեր ապահովութիւն և հանգիստ որոնելու համար ստուար զանգուածներով կը գաղթէին իրենց բնակավայրերէն և կը դիմէին դէպի Կ. Պոլիս և շրջակայքը։ Ժամանակակից պատմագիրը՝ Առաքել Դաւրիժեցի* (88) *կ'ըսէ թէ* «յայսմ ժամանակի եղեն ցիրուցան ազգն Հայոց եւ գնացին իւրաքանչիւր ոք հանդէպ երեսաց իւրոց գտանել տեղի կելոյ եւ ապրելոյ: Ոմանք յՈւռումելի, ոմանք ի Բուղտան, ոմանք ի Լեհ, ոմանք ի Կաֆայ, ոմանք ի ծովեզերն Պոնտոսի, ոմանք ի Թարվէզ եւ յԱրտաւէլ եւ ի գաւառս սոցա: Զի յազգէն Հայոց՝ որքան դարիպականք կան յասացեալ գաւառս, յայս ժամանակիս եւ յայս պատճառէս են գնացեալ»:

*Իսկ Դարանաղցի Գրիգոր վրդ.* (14) *ուրիշ ժամանակակից մը, Ճելալիներուն վրայ խօսելով կ'ըսէ թէ* «խուռն աւերակ արարին զամենայն աշխարհն..., որ Անատոլի կոչի այժմ, որ մնացեալք ի սրոյ նոցա փախստական եղաք»: *Քիչ յետոյ* (18) *կը գրէ թէ* «ոչ գոյր խաղաղութեան տեղի ուրեք, բայց միայն ի Կոստանդնուպոլիս եւ ի Թրակացւոց աշխարհիս, որ Ուռումել

ափ: Վասն որոյ աշխարհ ամենայն՝ Հայք եւ Տաճիկք աստ հաւաքեալ եւ ցրուեալ մինչեւ ցԲելլրգատն (=Պելկրատ) մինչեւ ցաշխարհն Պուղտանաց եւ Գոթացւոց եւ ամենայն Իւսկութացւոց»:

*Այս մեծ գաղթականութեան մաս կը կազմէին նաև Կեսարացիք, վասնզի ինչպէս բացատրուեցաւ Ճէլալիներու յուզումէն այս քաղաքն ալ զերծ չմնաց և նոյնիսկ Հիւսէյին փաշա հոն ապստամբեցաւ* 1599*ին և* 1601*ին Գարա Եազըճի, ամէնէն նշանաւոր Ճէլալին, որ երբեմն գրեթէ բոլոր Անատոլուին տիրեց, նաև գրաւեց Կեսարիան։*

*Հետեւաբար Կեսարիա կրեց այս մեծ ապստամբութեան բոլոր աղէտալի հետեւանքները և ենթարկուեցաւ կողոպուտի և կեղեքումներու, որոնցմէ փրկուելու համար Կեսարիոյ Հայ, Յոյն և Թուրք բնակչութիւնը անխտրաբար լքեց իր բնակավայրը և ապաստան փնտռեց պետութեան մայրաքաղաքը՝ Կ. Պոլիս և անոր շրջակայքը և հոն հաստատուեցաւ։ Յատկապէս Կեսարիոյ վիճակին մասին անսուտ վաւերագիր մը կրնար համարուիլ ժամանակակից գրիչի մը՝ Յակոբ Ջէյթունցի* «քարտուղար»*ին, վկայութիւնը, որ* 1608*ին Կեսարիոյ մէջ իր գրած Շարակնոցին յիշատակարանին մէջ կը նկարագրէ այդ օրերու Կեսարիոյ վիճակը, իր դժուարութիւնները ներկայացնելով։*

*Անիկա կ'ըսէ.* «աղաչեմ զամենեսեան, որ տեսանէք զսա կամ զաղափար առնէք, անմեղադիր լերուք սխալանաց եւ խոտորութեան գրոցս, զի դարիպ էի եւ սրտիկս տրտում: Ի դառն եւ ի նեղ ժամանակիս երերեալ եւ տատանեալ կանք ի մէջ այլազգաց որ եւ զօրացեալ են ազգք ի վերայ ազգաց, եւ բազում քաղաք եւ գաւառք աւերեցան եւ Ճալալիքն քակտեցին եւ աւերեցին... հացն սուղ էր զայս [տ]արի, որ Լ. դիրէմ հացն սակ մի գնեցի եւ կերա եւ գրեցի զշարակնոցս: Աւետարանն ասէ թէ ցամաքեսցի սէր բազմաց, ոչ ոք ի մարդկանէ ի վերայ խնամք չտարան հանապազ լայի եւ տարակուսեալ էի, բայց հեմշէհրին իմ Ջէթունցի Մղտեսի Առաքելն որ էր վաճառական. նա տանէր զիս իւր օտայն եւ մխիթարէր մարմնաւոր կերակրօք եւ ըմպելօք, եւ ասէր. եղբայր մի՛ հոգա, ես հանեմ զքեզ այս դառն դժար աշխարհէս: Եւ լսէի զխեղճ ձայն քաղաքին մերոյ Գերմանիկէ, որ է Մարաշ, որ էր սով եւ սուղ, Ջ. դիրէմ հացն ի փարա մի, եւ էր որդիքս իմ անդ, ոչ եկող կայր եւ ոչ գնացող. այսպիսի տառապանօք գրեցի զշարակնոցս, 'ի լաւ եւ ընտիր օրինակէ Սբսա, մականուն որ Խուլ կոչի, այլ մխիթարանք ոչ ունէի, բայց Մղտեսի Առաքել Սարկաւագն» *որ վերոյիշեալ վաճառական Առաքելն է (տես Տաշեան,* Մայր Ցուցակ, 525–526)։

*Այս տողերը ցոյց կու տան թէ Կեսարիոյ մէջ սով ու խառնակութիւնները իրենց անդրադարձութիւնը ունեցած էին և Հայերը հոն ալ ենթարկուած էին տառապանքի և բնական է որ այս պատճառներով, ինչպէս որ ուրիշ գաւառներէ մեծ բազմութիւն ապաստանած էր դէպի պետութեան կեդրոնը և անոր շրջակայքը, միեւնոյն երեւոյթը Կեսարիոյ և իր շրջակայից մէջ ալ պատահած է, ինչպէս կը հասկցուի Դարանաղցիի ալ գրածէն որ Ռոտոսթօ հաստատուած Հայոց մէջ նաև Կեսարացւոց գոյութիւնը կը մատնանշէ, ըսելով թէ հոն եկած են* «եւ զայլ խառնախաղինջ ժողովուրդսն՝ թէ՛ Կամախեցիք, թէ՛ Երզնկացիք, թէ՛ Սեբաստացիք, թէ՛ **Կայսերացիք** եւ զմեր Դարանաղեցի քաղաքացիք եւ զայլ եւ այլ երկրացիք»:

*Գաղթականութեան հոսանքը այնքան մեծ համեմատութիւն առած էր, որ Անատոլուի դատարկացումը պետութիւնը իր լուրջ նկատողութեան առարկայ ըրած և անով զբաղիլ պէտք տեսած է։*



1609*ին Գույուճը Մուրատ փաշա իր յաղթական դարձէն յետոյ, հրաման կը հանէ որ Կ. Պոլիս ապաստանող գաւառացիք դառնան իրենց տեղերը, երեք տարի տուրքէն ազատ մնալու պայմանով, և գրեթէ բռնութեամբ կը գործադրէ իր այս որոշումը որ Դարանաղցի նկարագրած է մանրամասնօրէն* (147–148) *ո՛չ միայն իբր ականատես, այլ իր մորթին վրայ կրող, վասնզի ինքն ալ* 1610*ին* 7000*նոց Հայ և Թուրք գաղթականներու կարաւանի մը հետ կը դառնայ իր երկիրը* (148)*։ Այդ գաղթականները որոնք ըստ պատմագիրին* «յամենայն աշխարհաց էին հաւաքեալ» (149) *մինչև Նէօկեսարիա (Նիկսար) խըմբովին կ'երթան, հոն Արեւելեան գաւառներու բնիկները պատմագիրին իսկ առաջնորդութեամբ կը շարունակեն իրենց ճամբան մինչև Կամախ, իսկ Փոքր Հայքի բնակիչները Նիկսարէն կը ցրուին իրենց տեղերը։*

*Կեսարացիք կայի՞ն անոնց մէջ՝ այս մասին չկայ ոևէ հաստատուն տեղեկութիւն, սակայն կրնանք, սխալած ըլլալու շատ քիչ հաւանականութեամբ՝ ենթադրել։ Սակայն եթէ կային ալ անոնք կրկին պէտք է փախած ըլլան, վասնզի Դարանաղցի* (19) *կը հաստատէ թէ Մուրատ փաշայի մահէն* (1612)) *յետոյ* «բարձաւ խաղաղութիւն յաշխարհէ եւ լցաւ ամենայն աշխարհն վայիւ եւ աղաղակաւ եւ դարձեալ փախստական եղեալ մեր ի յահէ նեղչացն եւ հազիւ անկաք յԸստամբօլս...: Եւ ամենայն ընդ մեզ գնացողք դարձեալ եկին եւ աստ էին խաղաղ կենօք մինչեւ ցայս ամի (=1635)»։

*Ուրեմն կրկին կը պարպուէր Անատոլուն։ Մասնաւորապէս կը փախչէին անոնք որոնք Մուրատ փաշայի հրամանով դարձած էին իրենց երկիրները, վասնզի, ինչպէս Դարանաղցի ըսած է, անոնք անվարժ էին հալածանքներու։*

*Ասոնք* 1612–1635 *մնալով Կ. Պոլսոյ շուրջը կապեր հաստատած և գրեթէ տեղացի դարձած էին երբ* 1635 *Ապրիլ* 10*ին Մուրատ Դ. Կ. Պոլիսէն ճամբայ ելաւ Պարսից դէմ երթալու համար։*

*Այս առթիւ Անատոլուէն անցած ատեն Սուլթանը կը տեսնայ անոր ողբալի վիճակը և դատարկութիւնը։ Սեբաստիոյ մէջ մասնաւորապէս* «յամենայն կողմանց մարդիկն՝ Հայք եւ Տաճիկք մնացեալքն որ անդ, զաղաղակ բարձեալ բողոքեցին առ կայսրն թէ՝ մեք մնացեալք սակաւաւոր եմք եւ աշխարհնին աւերակք են, եւ հարկապահանջութիւնն անպակաս է, եւ այս աշխարհաց մարդիկն Ըստամբօլ եւ ի բոլորքն են, չեմք կարող հարկապահանջութեանցն դէմ կալոյ վասն սակաւութեանն մերոյ, կամ զնոսա զամենեսեան հրաման արա՛ որ գան ի վեր յիւրաքանչիւր տեղիս, եւ կամ մեզ այլ հրաման տուր գնալ առ նոսա» (*Դարանաղցի*, 520)։

*Տէվէլու Գարա Հիսարի մէջ Սուլթանին կրած պարտութիւնն* (Այվազովսքի, Բ. 53) *— որ արդէն յիշեցինք — կը հաստատուի նաև Հայ գրիչէ մը, Ակնցի Յակոբ դպիրէն, որ ոտանաւոր գրութեան մը մէջ, վերնագրուած* «յաղագս սուրկունին որ յաւուրս Սուլտան Մուրատի եղեւ» (*թ,* 1173 *ձեռագիր էջմիածինի Մատենադարանին), կ'ըսէ թէ Սուլթան Մուրատ Դ. Կեսարիայէն անցած ատեն կը տեսնէ որ այդ տեղերէն այնքան ժողովուրդ Կ. Պոլիս գաղթած է՝ որ բոլոր քաղաքները և գիւղերը դատարկացած և անշէն մնացած են, ուստի ֆէրման կը հանէ որ բոլոր գաղթականները ետ դրկուին (Հ. Աճառեան,* Բանասէր, 1902, *էջ* 219)։

*Ինչպէս կը տեսնուի Դարանաղցի՝ Սեբաստացիներու դիմումը և*

ուրիշներ (Այվազովսքի և Յակոբ Դպիր) Կեսարիոյ վիճակը պատճառ կը համարեն Մուրատ Դ.ի հրամանին, սակայն կը կարծեմ թէ աւելի ճիշդ է բոլոր երկիրին վիճակը առիթ և պատճառ համարել այս հրամանին, ինչպէս ըրած է նոյն Ակնցի Յակոբ Դպիր, իր ձեռքով գրուած և իր հօրը Խօճա Վահրամի(1) կողմէ Կ. Պոլսոյ Պալատ թաղի Ս. Հրեշտակապետ եկեղեցիին նուիրուած և ցարդ հոն պահուած խիստ գեղեցիկ գրչագրութեամբ ձեռագիր Յայսմաւուրքին յիշատակարանին մէջ ուր կ'ըսէ թէ. «թվականն Հայոց ՌՁԴ (=1635) էր, ի չորեքտասաներորդի ամի թագաւորութեան իւրոյ, Սուլտանն Տաճկաց Մուրատ, ժողովեաց զզօրս իւր անթիւ եւ անհամար եւ խաղաց ... ի վերայ ազգին Պարսից ի պատերազմն եւ մինչ գնայր տեսեալ **զերկիրսն սակաւամարդ** եւ հարցեալ տեղեկացեալ եթէ յԸստըմբօլ են ժողովեալ եւ առաքեաց հրաման ի տեսուչն Ըստըմբօլայ՝ որ թէ Հայ թէ Յոյն, թէ Տաճիկ որք եկեալ են յարեւելից կողմանէ զամենեսեան զնոսա փութով ի տեղիս իւրեանց առաքեսցէ»։

Եւ հրամանը կը գործադրէ Պայրամ փաշա վէզիրը, չկամութեամբ և առ ահի։ Պարզուած անօղորմ տեսարանները մանրամասն նկարագրած են Դարանաղցի (520–528) և Յակոբ Դպիր Ակնցի (Հ. Աճառեան, ԲԱՆԱՍԷՐ, 1902, էջ 219 և 1904, էջ 174)։

Հրամանը, ինչպէս Դարանաղցիի գրածներէն կը հասկցուի, նախ մինչև 100 տարի առաջ գաղթողներուն վրայ կը տարածուէր, յետոյ մեղմացաւ և մինչև 40 տարի (1595–1635) առաջ եկողներուն վրայ սահմանափակուեցաւ(2)։ Ասկէ զատ շատերուն զանազան պատճառով թոյլտուութիւն եղաւ որ մնան(3)։

Կեսարիա, որուն դատարկութիւնը գլխաւոր պատճառներէն մէկը եղած էր Սուլթան Մուրատի այս անօղորմ ու խիստ հրամանին, որքա՞ն վերադարձողներով վերաբնակուեցաւ ճշդելու վիճակին մէջ չենք դժբախտաբար, վաւերագիրներու բացակայութեան և գտնուածներուն ալ թերի և պակասաւոր ըլլալուն համար։

Միակ վաւերագիրը որ այդ շրջանէն, այսինքն շուրջ 1617 թուականէն մեզի հասած է, Սիմէոն Դպիր Լեհացիի Ուղեգրութիւնն է, որ այդ թուականին՝ ուր Կեսարիա իբր թէ դատարկ էր, ցոյց կու տայ 500 տունէն աւելի Հայ բնակչութիւն քաղաքին մէջ, սակայն դժբախ-

(1) Խօճա Վահրամ Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն շինութեան ալ նպաստած է նիւթական ձեռնտուութեամբ։

(2) Կ. Պոլիսէն գրուած զեկուցումի մը համաձայն (տես Arch· des Propaganda Rome. Scritture refarite in S, Cong. Vol· 419, էջ 334. տես ՀԱ. 1927, էջ 182) որ 1634–1635 թուականներուն կրնայ գրուած ըլլալ, «Կ. Պոլսոյ Հայոց դէմ հրովարտակ մը ելած է որ այն Հայերը, որոնց բնակութիւնը այս քաղաքին մէջ, 40 տարիէն աւելի չէ, դուրս հանուին եւ տարագրուին Փոքր Ասիա, մինչեւ որ անոնց թիւը իջնէ 100.000ի»։ Սակայն հրամանին սոսկ Հայոց համար ըլլալը հաւանական չէ։ Դարանաղցիի և Ակնցի Յակոբ Դպիրի խօսքերը շատ բացորոշ են։

(3) Օրինակ Ռոտոսթօ հաստատուող Հայերը կաշառքով մնացած են (Դարան. 528-530)։ Նոյնպէս ազատած են Կ. Պոլսոյ պարիսպներուն նորոգութեան աշխատող գործաւորները (Յակոբ Դպիր Ակնեցի, ԲԱՆԱՍԷՐ, 1904, 174 և Ցուցակ Հայ Ձեռագրաց Կայսեր. Մատենադարանին ի Վիէննա, էջ 15)։



տաբար, ինչպէս ըրած է Սեբաստիոյ, Թօգատի և Զէյթունի համար չ'ըսեր թէ ճէլալիներու շփոթէն առաջ անոնք ի՞նչ թիւ ունէին(1)։

Սակայն մասնաւորապէս Կեսարիոյ Հայոց Կ. Պոլսոյ պէս հորիզոնը ընդգրկող միջավայրի մը ընտելանալէ յետոյ իրենց երկիրը վերադարձած ըլլալը չափազանց թէական ու կասկածելի կը թուի ինծի։ Շատ հաւանական է որ անոնցմէ շատ քիչեր հոն դարձած են, տրուած ըլլալով իրենց ճարպիկութիւնը և ճնարիմացութիւնը որով հաւանօրէն ճողոպրած են այս խիստ հրամանէն։

Ասոր համար շատ զօրաւոր փաստեր չունինք, սակայն կան երեւոյթներ, որոնք մասամբ կը հաստատեն այս ենթադրութիւնը։ Ասոնց ամէնէն գլխաւորն է ԺԷ. դարուն կէսէն յետոյ քաղաքին Հայ բնակչութեան նկարագրին փոփոխութիւնը, և պարսկահայ գաղութի մը վերածուիլը, որ պիտի տեսնուի ի ստորև։

Թրքական ռէժիմը այսպէս պատճառ մը եղած է որ պարբերաբար ու յարատև՝ կերպով Կեսարացիք, այլուր փոխադրուին և Կեսարիայէն դուրս իրենց բախտ որոնեն և այսպէս դատարկացնեն իրենց հայրենիքը, շարունակ ու մաս մաս հեռանալով անկէ։

## Ը.

## ՄՆԱՑՈՂՆԵՐՈՒՆ ԿՐԱԾ ԶՐԿԱՆՔՆԵՐԸ
## ԽՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՆԱԽԱՏԻՆՔՆԵՐ

Բոլոր այս իրողութիւնները բերելով քով քովի, կրնանք անվարան ու անկասկած ըսել թէ թրքական վարչութիւնը ունեցած է այս քաղաքին Հայ բնակչութեան համար սպառող, փճացնող և ծիւրող նկարագիր մը, և անոր թիւին պակսելուն պատճառ եղած։ Իսկ անոնք որ զարմանալի տոկունութեամբ մը իրենց ֆիզիքական գոյութիւնը կրցած են պահել և տևել, այն դժոխային վարչաձեւին տակ որ Օսմ. տիրապետութիւնը ստեղծած էր, պէտք է ըսել թէ անոնց կեանքը, դժխեմ ու սև եղած է, վասնզի անոնք ապրած են դժնդակ պայմաններու մէջ և բացարձակապէս իրաւազուրկ ու նոյնիսկ շատ տարրական իրաւունքներէ զրկուած։ Այն դոյզն և աննշան իրաւունքները որոնք իրենց տրուած էին, շնորհներ էին, որ անոնք կը վայելէին ի գին այնպիսի նուաստացումներու ու կեղեքումներու, որոնք պարզապէս անտանելի և անհանդուրժելի էին։

Նոյնիսկ կալուած ունենալու և կրօնական արարողութիւններ կատարելու պէս տարրական իրաւունքները, անոնք ստացած էին Սուլ-

(1) Նոյն դպիրը Սեբաստիոյ համար ըսած է թէ ճէլալիներէն առաջ ունէր 2000 տուն Հայ բնակիչ և յետոյ իր անցած ատեն 600 տուն (ՀԱ. 1934, էջ 155)։ Թօգատ ունէր առաջ 1000 տուն Հայ, իսկ իր անցած ատենը հազիւ 500 տուն (Նոյն, 154)։ Իսկ Զէյթուն նոյնպէս ունէր 800 տուն Հայ, և իր ատենը 30 տուն միայն։ Այս համեմատութիւնը անշուշտ Կեսարիոյ համար ալ գոյութիւն ունէր աւելի կամ պակաս։

թաններու գթութենէն՝ տկարութեան վայրկեաններու մէջ կամ զանազան հնարիմացութիւններով կամ հնչուն փաստ մ՚ կաշառքով։ Իբր անհաւատ՝ քրիստոնեային խօսքը և նոյնիսկ երդումը, արժէք չունէր և իր վկայութիւնը չէր ընդունուիր։ Ասիկա կը նշանակէր թէ Թուրք լուծին տակ ապրող քրիստոնեաներու համար խիստ դժուար՝ գրեթէ անհնարին բան մըն էր իր իրաւունքը պաշտպանելը մահմետականին դէմ։

Եւ կա՞ր արդեօք արդարութիւն, երբ կաշառակերութիւնը սրբագործուած սովորութիւն էր ո՛չ միայն մանր մունր պաշտօնեաներու այլ նոյնիսկ Սուլթաններու համար։

Սրբագործուած սովորութիւն էր նաև այն, որ տիրողը, առանց պատճառի անգամ, սպաննել կու տար ուներորը և կը յափշտակէր անոր ստացուածքը։

Անհուն կամայականութեանց թագաւորութիւնն էր։ Երբ Մեծ Վէզիրները անգամ ապահով չէին թէ վաղը միւս օր կենդանի պիտի մնան, ինչպէ՞ս կարող էր ապահով ըլլալ ռայեան, որուն նկատմամբ ո՛չ մի բռնութիւն, ո՛չ մի անարդարութիւն արգիլուած էր։

Իսլամ երկրին մէջ ոչ-իսլամին ապրիլը իսլամին կողմէ եղած շնորհք մըն էր, քանի որ անոր շնչած օդը և գործածած ջուրը՝ որ իսլամին նուիրական իրաւունքն էր, իր անարժան մարմնոյն գոյութեան և պահպանութեան համար իսլամին կողմէ կը շնորհուէր։

Շնորհք մըն էր նաև անոր ազատօրէն իր պաշտամունքը կատարելը՝ իսլամ երկրի մէջ, և պղծելը՝ իսլամներու սուրբ ականջները որոնք միայն իրենց մարգարէին անունը լսելու կոչուած էին, օրուան երեք պահերուն, իրենց մզկիթներու մինարէներուն կատարէն։

Այնպէս որ Քրիստոնեային պաշտամունքը աղմուկ և հայհոյութիւն էր, որ իրենց թոյլ կը տրուէր, պայմանով որ անոր ձայնը իրենց եկեղեցիներուն պատերէն դուրս արձագանգ չի գտնէր, ինչպէս որոշապէս ըսուած է եկեղեցիներու շինութեան առթիւ տրուած հնօրեայ կարգ մը հրովարտակներու մէջ(1)։

Նոյնիսկ ոչ-իսլամին իբր գերեզման տրուած հողը, իսլամին նուիրական երկրին վրայ, շնորհքի և գթութեան գործ մը նկատուած էր, ինչպէս շատ պերճախօսօրէն կը հաստատեն այն հրամանագիրները որոնք քրիստոնեաներու թաղման իբր արտօնագիր կու տային իսլամ կրօնաւորները(2)։

(1) Պրուսայի Հայոց 1594 թուականին տրուած հրովարտակի մը մէջ Հայ եկեղեցւոյ պաշտամանց և արարողութեանց անխափան շարունակութիւնը կը թոյլատրուի սա տեսակ բացատրութեամբ մը. «իրենց հայհոյութիւնները կատարեն անարգել՝ պայմանով որ չլսուի»։ Կը ցաւիմ որ բնագրին բառերը առձեռն չունիմ։ Արիստակէս եպ. Վանքեան (1847–1909 †) գոց գիտէր և կ՚ըսէր։

(2) Ահա անոր պատճէնը.

«Լապիսի լիպասը զաթրանի, համիլի թանը Շէյթանի, Մահրումի տէրկեանի ռապպանի, պէտ էսաս զօնա փափազ:

Ինհա օլունուր քի, կիրուհի քէֆէրէի, մէքրուհէնիզտէն ֆիյան քիւֆէրանըն օղլու, ֆէլան քէֆէրէ, միւրտ օլմըշ օլտըղընտան, լաշէի մէքրուհէսինի թիւրապ տախի զապտուլ էթմէզ իսէտ, նէ չարէ, նէ չարէ, նէ չարէ քի, թէէֆիւնիւ միւհ-



Շարունակ ոչ-իսլամին արժանապատուութիւնը կը վիրաւորուէր, վանդի տիրող վարչաձեւը կեանքի ամէն պարագաներուն ռայեային կը յիշեցնէր իր զրկուած մը կամ իսլամին հանդէպ նուաստ դիրքի մէջ գտնուած ըլլալը։ Զայն միայն կեղեքելու համար կը յիշէին։ Ամէնօրեայ ընթացիկ կեանքի և ամէնօրեայ յարաբերութեանց մէջ քրիստոնեայք ստիպուած էին ենթարկուիլ զրկանքներու և նախատինքներու, միշտ ու ամէն վայրկեան իրենց նուաստ վիճակը յիշելու համար։

Փողոցը մայթին վրայէն քալելու իրաւունքը իսլամինն էր, քրիստոնեան վարէն պիտի քալէր։ Ոչ-իսլամը ձի նստելու իրաւունք չունէր, շատ շատ կրնար էշ հեծնել։ Սիմէոն Դպիր Լեհացի որ 1612ին դէպ ի Մուշ ուխտագնացութեան առթիւ, Փոքր Ասիան ճեղքած է, Խարբերդ երբ կը հասնի, վարդապետ մը խրատ կու տայ թէ «սախըն ծիդ հետ չի տանիս, այլ թող աստ առ իս զծիդ եւ փոխէ զհանդերձդ եւ հին զձուձ ապա հագիր. զի աստ Քրթաստան է»: Եւ Լեհաստանցի դպիրը կ՚ըսէ թէ «այնպէս արարի, որպէս հրամայեաց», և կը յարէ թէ «այնպէս չար էին Խանչարիքն որ քրիստոնէից չտային ձի հեծնել, ոչ ջորի, ոչ լաւ չուխայ ագանիլ, ոչ այգի, ոչ տուն մեծ, այլ զամենայն յափշտակէին ի ձեռաց» (ՀԱ. 1934, 158)։

Քրիստոնեան, ինչպէս Լեհաստանցի դպիրը ըսած է, արդարև ազատ չէր իր ուզածը հագնելու, մանաւանդ իսլամին տարազովը զգեստաւորուելու, այլ պէտք էր յատուկ հագուստով երեւար։ Ասոնք խստութիւններ էին որ հետզհետէ կ՚ստեղծուէին և Թրքական մոլեռանդութիւնն էր որ կը յղանար զանոնք։

Նախապէս անոնք գոյութիւն չեն ունեցած։ Ասոր փաստը կու տայ մեզի վերածննդեան դարու գերհռչակ նկարիչներէն Դիցիանոյ Վէչէլլիոյի եղբայրը՝ նոյնպէս պատկերահան Կեսար Վէչէլլիօ (Cesare Vecel-

լիւքէսի օրթայըրքտան զալզմասը իչիւն, Շէհրին թըշարըսընա կէօթիւրիւպ պիր խէնտէկ գազուպ իչինէ պըրագուպ իւզէրինի թօփրաքլայիւպ չըյնայուպ, թէփէլէյուպ կէլէսին զօնա փափազ:

ՄԻՒՖԹԻ ԷՖԷՆՏԻ

Թարգմանութիւնն է.

«Ղաթրանի (խիստ սեւ) պէս տարազ հագնող, սատանայի գլխարկ կրող, Աստուծոյ պարգեւներէն զրկուող, վատ սկզբունքի տէր, զառամեալ երէց։

Կը ծանուցուի որ ձեր հայհոյիչ գարշելի ժողովուրդէն, այսինչ հայհոյիչին տղան այնինչ հայհոյիչը սատկած ըլլալով՝ թէև գարշելի պիղծ դիակը հող անգամ չ՚ընդունիր, ինչ օգուտ, ինչ օգուտ, որ այս զզուելի գարշահոտութիւնը մէջտեղէն վերցուելու համար քաղաքէն դուրս հանէք, խորունկ փոս մը փորել տաք, մէջը ձգէք, վրան հողով ծածկէք, լաւ մը տրորէք, կոխկռտէք ու գաք, զառամեալ երէց»։

ԿՆԻՔ ՄԻՒՖԹԻԻ

1695էն մինչեւ 1808 այս տեսակ հրամանագիրներով կը թաղուէին Հայերը։ Կեսարիոյ Հայերը Պեզճեան Ցարութիւն Ամիրայի միջոցաւ կրցած են արգիլել տալու 1808ին Սուլթան Մահմուտ Բ.ի հրամանաւ այդ գարշելի հրամանագիրը (տես Զէյթունի անցեալէն եւ ներկայէն, Բ. մաս 1903 էջ 209)։

lio) *Վենետիկցի, որ ԺԶ. դարուն վերջերը զանազան ազգերու տարազներու հաւաքածոյին մէջ կու տայ նաև Գարամանցիներու (տես* Սիսուան, 294) *և Ստորին Հայոց կողմերու Հայոց տարազները։*

*Ալիշան կ'ըսէ թէ* «Հեղինակը՝ Ստորին Հայս կոչէ զկողմանս հարաւոյ Փոքր եւ Մեծ Հայոց եւ ընդ Գարամանեանս դասելով զպատկերեալսն՝ յայտ առնէ եւ նոցուն բնակակիցս կամ մերձաբնակս» (Սիսուան, 290) *ինչ որ մեզի կը մղէ հաւատալու թէ այդ տարազները նոյնպէս Կեսարիոյ յատուկ էին, քանի որ Կեսարիա աշխարհագրականապէս Գարամանի ամէնէն մօտ և Փոքր Հայքի հարաւակողմը գտնուող ամէնէն հայաշատ կեդրոններէն մէկն էր։*

*Վենետիկցի նկարիչը կը նկարագրէ անոնց տարազը սապէս. համաձայն թարգմանութեան Ալիշանի որ տուած է նաև անոնց բնագիրը առնելով անոր* Habiti Antichi et Moderni *գործէն։*

*Ահա իր բառերը.*

ԿԻՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ.— Կանայք Ստորին Հայոց՝ անհեթեթ (կամ տարօրինակ) իմն կրեն գլխանոց, բազմագունեան քողովք. զգենուն պատմուճան զեղեցկակերպ 'ի ներքոյ, եւ 'ի վերայն կրկնոց սպիտակ բամբակեայ։ Դարձեալ, ունին եւ կտաւ մի գործած նման քառակուսւոյ կրօնաւորաց, երկայնագոյն ի թիկանց քան յառաջոյ կողմանէ, ընդ որ կարեն տեսանել եւ ոչ տեսանիլ»։

ԱԶՆՈՒԱԿԱՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ.— Այս ազգ արանց կրէ փակեղն ստուար, երկնագոյն, երիզապատ։ Երկայնեն զգիսակս հերաց եւ զմօրուս։ Զգեստ է նոցա կնգուղ կրօնաւորաց կամ նման նմին, այլ կերպասեայ կամ ասուեղէն կամ բամբակեայ, եւ յաճախ՝ գունաւոր։ Արկանեն զպարանոցաւ դենչակ իմն մետաքսեայ բարակաման, կարմիր եւ սպիտակ կամ այլ գունագոյն երիզօք, որոյ



ԿԻՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ ԱԶՆՈՒԱԿԱՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ

Կեսարիոյ հայկական հնագոյն տարազը, նկարուած ԺԶ. դարուն վերջերը Cesare Vecellio Վենետիկցի նկարիչէն։



միջին մասն ի վերայ լանջացն հանգրինի, եւ տտունքն զթիկամբքն անկանին։ Կօշիկս ագանին երկաթապատս հանգոյնս Թուրքացն» (Սիսուան, 296)։

*Սակայն Թուրքերը՝* րայեային *նուաստացումը կատարեալ ընելու համար իր հագնելու ազատութիւնը իսկ զլացան անոր և զայն այս տեսակէտով ալ կաշկանդեցին։*

*Նոյնիսկ այդ ԺԶ. դարուն վերջերը, ուր* Cesare Vecellio *այս նկարները գծած էր, Մուրատ Գ.* (1574-1595) «արաւ սասխ (կարդա՝ եասախ= *արգիլեց*) զՔրիստոնէ ազգին, զտուլպանս ի գլխուն առին ու ճաւիխայ դրին» *ինչպէս կ'ըսէ յիշատակարանը* 1582*ին գրչագրեալ ձեռագիրի մը որ կը պահուի Ս. Ղազարի վանքը ի Վենետիկ։*

*Ապահովաբար նոյնը կ'ակնարկէ Առաքել Դաւրիժեցի* (568) *երբ կ'ըսէ թէ Սուլթան Մուրատ* «ի ՌԻԹ (= 1580) թուին նեղացաւ ... ի Հրէից համարձակութենէն եւ վերացոյց զփակեղն ի գլխոց Հրէիցն, եւ Քրիստոնէիցն ամենայն. ապա ի տեղիս տեղիս զաւառ (*կարդա* կաւառ) եդուն եւ առին հրաման փակեղ ետին յետ ԺԸ (= 18) ամաց, ապա ի Կոստանդնուպոլիս եւ յայլ բազում քաղաք մնացին զդակով»։

*Սամուէլ Անեցիի շարայարողներէն մին* (176) *նոյնպէս կը հաստատէ թէ* «ՌԼ (= 1581) Սուլտան Մուրատն եբարձ զփակեղն ի գլխոյ Հայոց եւ Հրէից, զի զդակ դիցեն»։

*Որոշ է ուրեմն թէ Սուլթան Մուրատ Գ.* 1580-1581 *թուականներուն մասնաւորապէս հրաման հանած էր որ Հայերը և Հրեաները գդակ դնեն, իսլամներու պէս չհագնին։*

18 *տարիներ յետոյ կաշառքով փակեղ գործածելու արտօնութիւն կ'ստանան։ Հետեւաբար հրամանը երբեմն կը խստանար ու երբեմն կը մեղմանար, և միօրինակ ձև մը չունէր։ Մուրատ Գ.ի հրամանը անխախտ չէր մնացած։ Ինչպէս որ Դաւրիժեցի կը պատմէ թէ այն* 18 *տարի միայն կեանք ունեցած էր և կաշառքը զայն փոխած էր, կ'երեւայ թէ ուրիշ առիթներու մէջ ալ ինչ ինչ փոփոխութիւններ եղած են։*

*Ասոնցմէ մէկուն յիշատակութիւնը պահած է Երեմիա Չէլէպի իր օրագրութեան մէջ, պատմելով թէ* 1657 *Հոկտ.* 23*ին* «Ուրբաթի օրն եասաղ արար Ղայմախամն զղաւուխ եւ զմէսթ՝ սաստիկ հրամանաւ եւ ամենեքեան զկերպս իւրեանց ցածուցին խոնարհութեամբ յոյժ» (*տես* Շողակաթ, 55)։ *Ինչպէս այս տողերէն կ'երեւայ կաշառքով ձեռք բերուած հրամանը ետ առնուած է և սաստկագոյն հրամանով մը վերստին արգիլուած է* դաւուխ *և* մէսթ *գործածել քրիստոնէից։*



ԹՐՔԱՀԱՅՈՑ ՏԱՐԱԶԸ ԺԷ. ԴԱՐՈՒՆ ՄԷՋ

*Այս խստութիւնը իր ծայրագոյն աստիճանին հասուցած է Գայայլը Ահմէտ փաշա Եպարքոսին տեղակալը (Գայմագամը), որ ո՛չ միայն արգիլած է ոչ-իսլամներուն սամուրենի գլխարկ դնել, գունաւոր հա-*

գուստներ և դեղին մուճակներ (մեսթ) հագնիլ, այլ հրամայած է որ տեսակ մը բոժոժ կապեն անոնք, իրենց վրայ, բաղնիքներուն մէջ իսլամներէն զատուելու համար (Այվազովսքի Բ. 216), և իր այս ծիծաղելի ծայրայեղութեան համար պաշտօնանկ եղած է Ահմետ Բ.էն (1691–1695)։

Տալտապան Մուսթաֆա փաշա Վէզիրը 1703ին նոյնպէս հրամայած է որ քրիստոնեաները և հրեաները չհագնին դեղին հողաթափեր (մեսթ) և չդնեն կարմիր գդակ, այլ միայն սեւ։ Նոյնպէս հրամայեց որ կիները հագնին լայն վերարկուներ և չրջազգեստներ և «մի եւս նրբինս առնել որպէս ցայնժամ, այլ խոշորս եւ թանձունս, եւ զեզերս կողպատին (=չրջազգեստին) ծապաւինել սեաւ երիզօք» (Այվազովսքի Բ. 238)։

1727ին Ահմէտ Գ. արգիլած է կիներուն լայն օձիկով վերարկուներ և միջակ վիճակ ունեցող այրերուն և կիներուն, սպիտակ աքիսէ մուշտակ հագնիլ (Այվազովսքի Բ. 331)։

Նկատելի է որ այս խտրականութիւնը հաւասարապէս պետութեան ամէն մասերու մէջ միօրինակ կերպով չէր կիրարկուիր։

«Ի Ստամպօլ սակաւ մի ունին մխիթարութիւն քրիստոնեայք եւ վայելչութիւն, զի ունին եկեղեցիք պայծառ, տօնախմբութիւն ձայնիւ, հեծնուն ձի եւ ջորի, ագանին եուզչլայ, եթմիչչլայ չուղայ, ուտեն, ըմպեն, ուրախ լինին ունին մեծամեծ տունս, էգիս եւ դրախտս եւ այլն. զոր յԱնատօլին բնաւ զայս ոչ երեւի այլ տներն ախոռի նման, եւ չալուով, ցած իսկ ի քաղաքն քարբիչով, դռվին փոքր եւ խորափիտիտ, յաւարչտին: ... Եւ այսպիսի տառապանք եւ նեղութիւն էին ի ձեռս Տաճկաց, վասն որոյ յոյժ աղքատ եւ չքաւոր են, զի միշտ զրկեն, զզվեն, տուգնեն, զրպարտեն եւ առաւել հարկս պահանջեն, եւ թէ տան որդի ունիցի ոք, ամէնէն խարան առնուն, եւ թէ հեռանայ, դարձեալ առնուն: Եւ Ստամպօլայ գաւառօք ձի, ջորի հեծնուն եւ անտի Սեւաստ մինչ յԱմիթ էշ եւ ուղտ. իսկ Սեբաստուին տան էլ այ տէկմա չէրեւի, ամէնն եզ կու բանեցնեն, աղ եւ բեռն բառնան, այլ եւ հեծնան, վասն որոյ ես ամէն քաղաք, ամէն տեղ յոլով վնաս եւ տուգանք տայի վասն ձիոյս, այլ եւ մուր տեղիս, օտանին եւ սրահոց տուն տայի պահել, ամէնին դրամ տայի, որ ուլաք չառնուին եւ ի ճանապարհին եւս քանիցս անգամ առին ուլախ, զոր տօք հազիւ կարացի թափել ի ձեռաց նոցա զեղկելի ձիակս եւ այսպէս ահիւ եւ դողութեամբ շրջէի տարակուսանօք, թէպէտ մեծ քարվանով շրջէի, զի ամէն տեղ հարամիք էին, սոխթանի, ամէն տեղ թալան եւ եաղմայ եւ զուլում, որ ես առաւել քան զամենեսեանն տառապէի, վշտանայի, քանզի տեղեակ չէի ես այս բաներուս, հիանայի եւ նեղանայի յոյժ, եւ հանապազ ի սուգ եւ ի տրտմութիւն էի անմխիթար» (ՀԱ. 1934, 158-159)։

Լեհաստանի պէս քաղաքակիրթ ու քրիստոնեայ երկրէ մը եկող Սիմէոն դպիրին այս տողերը կը գծեն պատկերը այն կեանքին որ Քրիստոնեան տանելու պարտաւորուած էր։

## Թ.

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՄԻԱԿ ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀԸ

Քրիստոնեայք ստիպուած էին համակերպիլ բոլոր այս մոլեռանդական քմահաճոյքներուն որչափ ատեն որ Օսմ. պետութիւնը իր բացարձակ և անպարտելի զօրութեան մէջ էր, վասնզի ո՛չ մէկ պե-



տութիւն կրնար համարձակիլ միջամտել անոր ներքին գործերուն, թէև Կ. Պոլսոյ գրաւումէն (1453 Մայիս 29) յետոյ, մեծ մտազբաղութիւն մը եղած էր քրիստոնէութեան համար, Օսմ. պետութեան դէպի կեդրոնական Եւրոպա առաջխաղացութեան առջեւ թումբ կանգնել, և Արեւելքի քրիստոնէից բոլոր յոյսը և ակնկալութիւնը միայն մնացած էր Արեւմուտքէն գալիք փրկութեան մը վրայ։

1517էն յետոյ երբ Խալիֆայի հանգամանքն ալ ստացան Օսմ. վեհապետները, աւելի ծանրացաւ և դժնդակ դարձաւ քրիստոնեաներու կեանքը այս երկրին մէջ, ուր կեղեքումներ և աւարառութիւններ իսլամին բացարձակ իրաւունքը՝ և լռին համակերպութեամբ կողոպտուիլ և նուաստանալ՝ քրիստոնեային պարտականութիւնը եղած էին։

Պետութեան ատուածպետական կազմակերպութիւնը և անոր
վարչական դրութիւնը որ սանձարձակ ազատութիւն կու տար ամէն
կարգի բռնակալներու, հարստահարիչներու և կեղեքիչներու, այն-
քան դժնդակ վիճակ մը ստեղծած էր պետութեան մէջ որ Հայերու, ինչ-
պէս նաև ոչ-իսլամ ուրիշ ազգերու պատկանող բազմաթիւ անհատներու,
իսլամութիւնը ընդունելով փրկուելու տկարութիւնը ունենալը շատ
բնական էր, իբր անխուսափելի անկումներ։ Եւ 600 տարիներու ըն-
թացքին եթէ Թուրքիոյ բաղկացուցիչ ոչ-իսլամ համայնքները ամ-
բողջովին իսլամութեան չեն յարած ասիկա պէտք է վերագրել կրօ-
նական այն անօրինակ ամուր ներշնչման որ բոլոր Արեւելքը կը
յատկանշէ։

Այլապէս պատկերը բոլորովին տարբեր պիտի ըլլար։

Արդարեւ ամէն ազգի տրուած առաքինութիւն մը չէ, միշտ լաւագոյն օրերու յոյսը իր սրտին մէջ՝ կրել համբերատարութեամբ ամէն հալածանք որ տիրողները կը գործադրէին ամէն օր և ամէն վայրկեան և հանդուրժել՝ այն նախատինքներուն որ իրեն կը պատճառէին։

Այս համակերպութեան մէջ անշուշտ Աւետարանը որոշ չափով մը դեր կատարած է, սակայն պէտք չէ ուրանալ թէ մանաւանդ Եկեղեցին, ո՛չ միայն իբր հոգեւոր մխիթարութեան և սփոփանքի կայան մը հանդիսացաւ, այլ նաև նեցուկ մը եղաւ ներքին ազգային կեանքը կազմակերպելու և Եկեղեցիին կամարներուն տակ ազգը ապրեցնելու իր մշակոյթով։ Օսմ. պետութեան կրօնական հիմը և խալիֆայի մը իշխանութեան տակ գտնուիլը, գոնէ այս տեսակէտով օգտակար անդրադարձութիւն մը ունեցած է ոչ-իսլամ հպատակներու կեանքին վրայ, վասնզի այս պատճառով իսկ թոյլ տրուած է որ բաղկացուցիչ ազգերը ունենան իրենց կրօնապետներուն իշխանութեան տակ մասնաւոր կազմակերպութիւններ, գոնէ կրօնական մարզին մէջ որոշ ձեռնահասութիւններով։ Այդ իրաւունքները քրիստոնեայք ճարտարութեամբ ընդարձակեցին, կրօնքի հետ առընչակից դնելով կարգ մը քաղաքային գործեր, որոնք իսլամներն ալ շէրա՛աթի սկզբմանց համաձայն կրօնական կը նկատէին։ Այսպէս ոչ-իսլամ կրօնապետները ստացան իրաւունք վճիռներ տալու կրօնական և ամուսնական դատերու համար, տեսչութիւն վարելու հոգեւոր գործերու, և հսկողութիւն կատարելու՝ հասարակութեան բարեգործական և կրթական հաստատութեանց վրայ։ Ասիկա րայեային՝ տրուած միակ առանձնաշնորհն էր որ իր բազմաթիւ զրկանքները աչքի առջեւ ունենալով, բան մըն

էր և կենսական նշանակութիւն մը ունեցաւ րայեաներու ճակատագիրին վրայ, ազգապահպանութեան տեսակէտով։ Սակայն այս մարզին մէջ իսկ հպատակները անխոցելի չեն եղած, վասնզի Թուրքերու համար ոչ մէկ սրբութիւն գոյութիւն ունեցած է։ Դարձեալ Սիմէոն դպիր Լեհացի, կը վկայէ թէ թրքական քմահաճոյքը եկեղեցիներէն ներս ալ իր ազդեցութիւնը ի գործ կը դնէր։ «Եւ այսմ ամի (1613), կ'ըսէ, յորում ես էի Թօխաթ, ել հրաման չար, թէ եկեղեցիս եւ վանօրայս մի վառեսցեն մոմեղէն ճրագ, այլ եղէ. եւ թէ ուրեք գտանէին՝ տուգանէին» (ՀԱ. 1934. 159)։ Բռնակալութեան բերած ապականութիւնը, նոյնիսկ ժողովուրդին անդամներուն միջոցաւ ենիչէրիներու սարսափը մեր եկեղեցական գործերուն խառնել կու տար։ Ենիչէրիները, ինչպէս Սիմէոն դպիր կը վկայէ «առաջնորդաց չտային քննել հաս — զհաս կամ օրէնք պահել, զի թէ ոք կամէր կին առնուլ եւ չհասուրք լինէր, չերթային առ հովիւ կամ առաջնորդ, այլ՝ (երթային առ) ենչարի մի եւ տային կաշառ, եւ նա զայր երեցուն բօհուզով պսակ տայր առնել, եւ նա ակամայ պիտէր խօսիցն չելնէր. ապա թէ ոչ բազում չարիս անցուցանէր ի գլուխն եւ վնաս եւ տուգանք ձգէր զնոսա. այլեւ եկեղեցեաց եւ վանօրէից: Եւ թուրքաց աշխարհն ամենայն այդպէս են, ապա Խարբերդ առաւել քան զամենայն» (ՀԱ. 1934. 158)։

Չէ կարելի հասկնալ թէ Խարբերդի Հայոց կեանքը ինչո՞ւ ամէնէն աւելի դժնդակ եղած ըլլայ։ Միթէ Կեսարիա, թրքական բարբարոսութեան այդ որջին մէջ նուազ դժնդա՞կ էր Հայերու կեանքը։ Աւելի լաւ է ըսել թէ ամէն կողմ միեւնոյնն էր, միայն քանի կ. Պոլիսէն դէպի Արեւելք երթուէր, այնքան կը ծանրանար կացութիւնը։ Իսկ Կեսարիոյ և Խարբերդի միջև տարբերութիւն չէր կարելի դնել։

## Ժ.

## ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՅՈՑ ԿՐԱԾ ՄԱՍՆԱՒՈՐ ՑԱՒԱՊԱՆՔՆԵՐԸ

Կեսարիոյ Հայերը՝ գուցէ ամէնէն դժբախտներն էին Օսմ. պետութեան այն շրջաններուն ուր իր բանակները անզուսպ գազաններու պէս պարսկական սահմաններէն կեդրոնական Եւրոպա, և Կովկասէն մինչեւ Հնդկաց Ովկիանոս և կեդրոնական Ափրիկէ կը սուրային՝ վայրենի մռնչումով դողացնելով ազգեր և պետութիւններ։ Անոնք այդ սարսափի օրերուն կը կրէին բոլոր այն դառնութիւնները, կեղեքումները և հարստահարութիւնները որոնք Օսմ. լուծը կը յատկանշէին։

Կեսարիոյ Թուրքերը՝ շատ աւելի բարբարոս և մոլեռանդ — թերեւս մեծ մասամբ նորադարձներու սերունդ ըլլալուն— նոյնիսկ Հայ լեզուի գործածութիւնը արգիլած էին խեղճ Հայերուն։

Եւ հակառակ ասոր, այս դժնդակ պայմաններուն և անտանելի միջավայրին, Հայերը իրենց գոյութիւնը պահած, տեւած ու յարատեւած են, անշուշտ չափազանց մեծ կորուստներով ու ահագին զոհողութիւններով, մանաւանդ իրենց թիւէն ու քանակէն շատ բան տուժելով։ Անոնք ո՛չ միայն բռնի իսլամացումներու դառն փորձութեան այլ նաև անոր մէկ ուրիշ եղանակը եղող մանկաժողովներու (տէվշիրմէ) զարհուրելի ու անտանելի արհաւիրքին տոկալու զօրութիւնը ցոյց տուած են։

Անոնք՝ Թուրքիոյ այդ խուլ և ամէն սահմաններէ հեռու վայրին



մէջ, կրած են ամէնէն զարհուրելի բռնութիւնները, որոնք Թուրքերը կրնային յղանալ։ Նոյնիսկ կարելի է մտածել թէ անոնք ենթարկուած են պարբերաբար ջարդերու, տեղական բռնակալներու կողմէ սարքուած։

Ձեռագիրի մը (Վիեննայի Մխիթարեան Մատենադարանին Թ. 574) յիշատակարանին մէջ որ կը պարունակէ ժամանակագրական տեղեկութիւններ, կը կարդանք «դարձեալ թվ. ՌՃԿ (= 1711) Կեսարացիքն Սէֆէր արարին Հայուն վրայ. Աստուած վերջն բարին կատարէ ամէն»։

Թէև շատ յստակ չէ այս «սէֆէր արարին» բացատրութիւնը սակայն «յարձակում գործեցին» կրնայ մեկնուիլ, քանի որ Սէֆէր բառը շարժումի կամ գաղթի գաղափարը կու տայ։ Եւ որովհետև «դարձեալ» բացատրութեամբ կ'սկսի հատուածը, դիւրին է մակաբերել թէ այս տեսակ յարձակումներ երբեմն երբեմն կը պատահէին, անշուշտ մոլեռանդական կիրքերու բորբոքմանց պահուն։

Անշուշտ ասոնք կը գործադրուէին բռնի կրօնափոխութեան հարկադրելու համար քրիստոնեաները, որոնք յանձնուած էին Թուրք բռնակալներու քմահաճոյքին, որոնք սանձարձակ կը գործէին Կեսարիոյ շրջանակին մէջ։

Ասոնց սարսափը ժողովուրդը իր յիշողութեան մէջ պահած է, յաճախ չփոթելով իրարու հետ այդ գազանները։ Այսպէս ժողովուրդին մէջ պահուած էր անունը Գաթթալ անուն յելուզակի մը որ «քէօյ երգան» յատկանշական անունով վերակոչուած է։ Աւանդութիւնը անոր կը վերագրէ վայրագ արարքներու շարք մը և աւերածութիւններ։ Կ'ըսուի թէ անիկա ջարդած է Կեսարիոյ Հայերը, աւերած է Ծընհըգլըի Յունաց վանքը և տեսակ տեսակ բռնութիւններ գործադրած։ Կը պատմուի թէ ինքն է պատճառը Կեսարիոյ Հայոց և Յունաց թրքախօս դառնալուն վասնզի ինքն է որ արգիլած է յունարէնին և հայերէնին գործածութիւնը և հարկադրած՝ Թուրքերէն խօսիլ և նոյնիսկ կ'ըսուի թէ Կեսարիոյ Յոյն եպիսկոպոսին լեզուն կտրած է այս հրամանին անսաստած ըլլալուն համար։

Թէ ո՞ր աստիճան պատմական անձ մըն է այս Գաթթալը, խնդրական է։ Տեսնուեցաւ (վերը 305) արդէն թէ Գաթթալ կազի անուն Թուրք հերոս մը Ը. դարուն արաբական բանակներու հետ Կեսարիա մտած և հոն գործադրած էր հերոսութիւններ, դուք հասկցէք վայրագութիւններ։

Կարելի է խորհիլ թէ այս կէս-առասպելական հերոսին վերագրըւած ըլլան արարքները թրքական ռէժիմին տակ սունկի պէս բուսնող ուրիշ բռնակալներու և կեղեքիչներու, վասնզի հակառակ պարագային կարելի չէր որ քէօյ երգան թրքական վերադիր անունը տըրուած ըլլար Գաթթալ կազիի։ Բոլորովին անկարելի չէ որ նոյն անունով ուրիշ բռնակալ մըն ալ գտնուած ըլլայ։

Այս տեսակ բռնաւորներ և վայրագ գազաններ միշտ գոյութիւն ունեցած են, որոնք իրենց բան գործ ըրած են իսլամութեան հարկադրել քրիստոնեաները, տեսակ տեսակ կեղեքումներով և խոշտանգումներով։

Կը պատմուի թէ Մոլլա Հէօնքեար օղլուի ցեղէն բռնակալ մը ասկէ աւելի քան 200 տարիներ առաջ, բռնի իսլամացուցած է Գըզըլ-

օրէն յոյն գիւղը, որուն լեռնաբնակ բնակչութիւնը մինչև վերջերը շ գիրը ս և ճ գիրը խ կը հնչէր ճիշդ Յոյներուն պէս։

Կը պատմուի նոյնպէս թէ Թուրքերը՝ զբօսանքի համար յաճախ կ՚սպանէին քրիստոնեաները և անոնց մարմինը քաղաքին աղբ կրող իշու (եայմաններու) տոպրակներու մէջ դրած կ՚անհետացնէին։ Ենիչէրիներու մէկ պետը որ Գըր-օղլու կը կոչուէր և իր անգութ արարքներով նշանաւոր հանդիսացած, երբ կը մեռնի իր դիակը կը թաղեն Պէզիրխանէի քով Գըր օղլու մէզարլըղը կոչուած տեղը (Եղիազարեանի ձեռագիր)։ Այս տեսակ հարստահարիչներ ու կեղեքողներ միշտ անպակաս եղած են և շարունակ բռնութիւններ գործադրած։

## ԺԱ.

## ԲԱՐԵՆՈՐՈԳՄԱՆՑ ԿԵՂԾ ԽՈՍՏՈՒՄՆԵՐ

Հարստահարութիւններ և կեղեքումներ ու գազանային բռնութիւնք, որոնք կը գործադրուէին խաւար ժամանակներու մէջ, շարունակուած են այն թուականներուն ետև երբ եւրոպական քաղաքակրթութիւնը թափանցած է Թուրքիա և իբր թէ քիչ շատ ռայեաներու կացութիւնը բարւոքելու միջոցներ մտածուած, առանց հիմնական ու արմատական բարելաւման մը։

Այս շարժումը, որ արտաքին ճնշման տակ ծնունդ առած էր, մասնաւորապէս շեշտուած է 1839էն յետոյ, երբ իրարու յաջորդած են բարեկարգութեանց և բարենորոգմանց խոստումներով լեցուն հրովարտակներ և բարձրագոյն հրամաններ, որոնց գլխաւոր նպատակն էր իբր թէ բոլոր հպատակներու մէջ, առանց կրօնի և ազգի խտրութեան, ստեղծել իրաւանց և պարտուց հաւասարութիւն, բան մը որ երբեք չիրականացաւ մինչև այսօր Թուրքիոյ մէջ, անցեալ հարիւր տարուան ընթացքին, հակառակ երկրին վարչաձևին մէջ ներմուծուած փոփոխութիւններուն, և՛ Սահմանադրութիւն (1876 և 1908) և՛ Հանրապետութիւն (1923) հռչակուելուն։

Հրովարտակներ, հրամաններ, խոստումներ և կարգադրութիւններ իրարու յաջորդեցին, սակայն մտայնութիւնը որ արմատացած էր Թուրքին մէջ կարելի չեղաւ փոխել, և անիկա ապրեցաւ իր հին ու աւանդական գաղափարներով, և երբեք անկեղծ չեղաւ իր բարենորոգելու ջանքերուն մէջ։

Այս տեսակէտով չափազանց յատկանշական է և խորհրդածութեան արժանի, տեսութիւնը Կեսարացի Էշրաֆի պատկանող Թուրքի մը որ ես լսած եմ իմ հօրմէս։

Գաւառներու մէջ սովորութիւն էր կայսերական գիրերը ընթեռնուլ հրապարակաւ կառավարական պաշտօնատուններու առջև, ուր սովորաբար կը խռնուէին մունետիկներով կոչուած՝ քաղաքին բնակիչները։

Այս թուականներուն երբ բարենորոգման հրովարտակներ իրարու կը յաջորդէին, Կեսարիոյ մէջ, ամէն անգամ որ այս տեսակ հրովարտակ մը ընթերցումէն յետոյ տուն կը դառնային, Թուրք արդարակարով երեւելի մը իր դրացի Հայ չօրպաճիին ականջէն վար կը փըսփըսար. «Հաճի աղա, ինամա, վաս իտէր սիզի սէվինտիրիր, իճրա իթմէզ պիզի սէվինտիրիր»: Եւ իրաւ, եթէ ուշադրութեամբ դիտուի ԺԹ. դարի վախճանէն սկսեալ մինչև Ի. դարուն սկիզբները Թուրքիոյ ներքին քաղաքականութիւնը, անոր հիմը այս միակ նախադասութիւնն էր — «խոստանալ ու չգործադրել», մանաւանդ երբ այս խոստումը առնչութիւնը ունէր քրիստոնեաներու կեանքին, պատիւին և ինչքին ապահովութեան ամենակենսական խնդրոյն հետ։

Եթէ այդպէս չըլլար, բոլոր Թուրքիոյ քրիստոնեաները և մասնաւորապէս Հայերը երջանկագոյն վիճակի մը մէջ պիտի գտնուէին և բնաւ ոեւէ պատճառ պիտի չունենային գանգատելու՝ եթէ կառավարութիւնը անկեղծօրէն, ուղղամտութեամբ և անաչառութեամբ գործադրէր 1839 Նոյեմբեր 9ի Կիւլհանէի Խաթթը Հիւմայիւնը որ կը խոստանար ապահովութիւն կենաց, պատուոյ և ինչքի, արդարութիւն տուրքերու և հարկերու, և կանոնաւոր զինուորագրութիւն, եթէ Օսմանեան կառավարութիւնը 1851ին իրապէս նուիրագործէր այն խոստումը զոր 1844 Փետր. 21ին տուաւ Ֆրանսայի և Անգլիոյ դեսպաններուն՝ եօթը տարի յետոյ կրօնքներու ազատութիւն հռչակելու համար, եթէ պաշտօնական Թուրքիա ջանար իրագործելու իր 1853 Մայիս 26ի և 1854 Օգոստոս 26ի հրովարտակներով և 1856 Փետրուար 6ի Իսլահաթի հրովարտակով իր քրիստոնեայ հպատակներուն տուած խոստումները։ Ասոնք չիրագործուեցան, վասնզի նոյնիսկ զանոնք ստորագրողները կամք չունէին գործադրելու և շատ անգամ ճնշման և ստիպման տակ՝ խոստումով մը վտանգը անհետացնելու միայն աշխատած էին։

## ԺԲ.

## ԱԶԴԵՑԻԿ ՀԱՅԵՐ ԵՒ ԻՐԵՆՑ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԸ

Ինչպէս Թուրք վարչութեան տակ ապրող բոլոր քրիստոնեաները, նոյնպէս նաև Հայերը, ինչպէս Օսմ. երկրին բոլոր տարածութեան նաև Արգէոսի շուրջը, գոյութեան կռիւ մղեցին, ամէն ինքնապաշտպանութեան միջոց մտածելով գրեթէ բնազդով։ Եւ որովհետև իրենց տրուած չէր միջոցը զէնքով կատարելու այդ ինքնապաշտպանութիւնը, անուղիղ միջոցներ եկան տեղ գտնալ ժողովուրդին մէջ, որ յաճախ իր կաշին փրկելու համար դիմեց նենգութեանց և անպարկեշտ միջոցներու։ Հետեւաբար ժողովուրդին՝ մանաւանդ անոր քաղաքներու մէջ ապրող մասին— որ աւելի յաճախ շփում ունէր տիրողներուն հետ— արեան մէջ ներարկուեցան բարոյական ապաշնորհութիւններ, քծնումներ, շողոքորթութիւններ, ստախօսութիւններ, մատնութիւններ։

Յաճախ այս միջոցներով քրիստոնեաները կը յաջողէին ո՛չ միայն իրենց գոյութիւնը պահպանել, այլ նաև ազդեցիկ դիրք ստեղծել իրենց հաւատակիցներուն մէջ։ Այսպէս կը կազմուէր քրիստոնեայ իշխանաւորը որ ընդհանրապէս զզուելի տիպով մը կը ներկայացնեն մեր պատմագիրներէն ոմանք իբր դրամի, հարստութեան մարդ, որ առաջացած է կաշառքներով և վաշխառութեամբ և այլ դատապարտելի միջոցներով։ Կատարեալ ստրուկ մը իրմէն բարձրին, այսինքն

մահմետականին առջև, իսկ անգութ հարստահարիչ մը՝ իրմէ ստորինին՝ այսինքն քրիստոնեային առջև։

Անիկա մահմետական ազդեցիկ պաշտօնեաներու առջև դիրք ունէր և անով կարող էր երբեմն կարգադրել քրիստոնեայ համայնքին գործերը իր շողոքորթութիւններով, կաշառքներով, բայց անոր փոխարէն անիկա կը գրաւէր ռայեաներու մէջ տեսակ մը փաշայի, հրամայողի և կեղեքողի դեր։ Թուրքիոյ Հայ ամիրաները ահա կը ներկայացուին, այսպիսի տգեղ պատկերով մը (տես Լէօ, Հայկական Տպագրութիւն, Ա. հտ. 29–39)։

Այս դատաստանը որ Լէօ, մեր ժամանակակից պատմագիրներու ամէնէն կարկառուն և անաչառ նկատուած դէմքը և իրեն հետեւողներ, կը ներկայացնեն, պէտք է ըսել թէ չափազանց խիստ է և որոշ չափով անարդար։

Ամիրայութիւնը և Վէզիրներու սեղանաւորութիւնը որ կը ներկայացուի այնքան զզուելի պատկերով մը, արդար չէ։ Պէտք է խորհիլ և առանց կարմրելու խոստովանիլ թէ այդ ստրուկ, քծնիք ու շողոքորթութիւն ընող Ամիրաները, իրենց անձնական յարաբերութիւններով այդ ամենաբարբարոս ժամանակներու մէջ որ մարդոց կեանքը և մահը բռնակալներու մէկ բառէն կախուած էր և ենիչէրի մը իր սուրին լաւ սրուած ըլլալը կեավուրի մը պարանոցին վրայ փորձելու ազատութիւնը ունէր, հնարիմացութիւններով, դրամական զոհողութիւններով և հազար ու մէկ վարպետութիւններով ազգը ապրեցուցին, անոր բարգաւաճութիւնը և նիւթական բարօրութիւնը, տրուած պայմաններու մէջ, կարելի եղածին չափ ապահովելով։ Իսկ ի՞նչ ըրաւ ստրկութեան դէմ ըմբոստացող մեր սերունդը, Օսմ. պետութեան տկարացած մէկ շրջանին, Եւրոպայի համակրանքը և Օսմ. պետութեան ստորագրած յանձնառութիւն-դաշնագիրները յենակէտ ունենալով հանդերձ. — բացարձակ բնաջնջեց ազգը: Արդեօք Լէօ եթէ առիթ ունենար անգամ մըն ալ անդրադառնալ ու այն տողերուն որ հազիւ 30 տարի առաջ գրած էր, արդի իրականութեան և այս ազգաւեր կացութեան առջև պիտի չվարանէ՞ր ոեւէ եղանակով ազգը պահպանող այդ հիներու ճակատը խարանելու նախատինքով, փոխանակ երախտագիտութեամբ յիշելու անոնց ջանքերը։

Արդեօք պիտի չխղճահարէ՞ր այս տողերուն համար, որ այնքան թեթեւօրէն իր յաւէտ յարգելի գրիչը թուղթին յանձնած էր, յախուռն դատաստանով մը։

Այդ հիները իրենց նուաստացումին մէջ մեծ են մեզի համար, վասնզի բարբարոս ժամանակամիջոցի մը մէջ ազգը ապրեցուցին և հնարաւոր նուազագոյն վնասով զայն հասուցին ապահով ժամանակներու, մինչ նորերը՝ իրենց ամբարտաւան յոխորտութեան մէջ անխոհեմ և իմաստութեան գաճաճներ՝ քաղաքակրթութեան դարու մը մէջ անլուր և աներեւակայելի աղէտներու մատնեցին այս ազգը և անոր բնաջնջումին և իր հայրենիքէն իսպառ վտարման պատճառ հանդիսացան։

Մենք չենք ըսեր թէ Օսմ. կայսրութիւնը դրախտ մըն էր և հոն ամէն ինչ կանոնաւոր ու կարգին։

Ո՛չ, և հազար անգամ ոչ։

Արդէն բացատրեցի թէ որքան անտանելի ու անհանդուրժելի էր



անիկա իբր միջավայր։ Հոն կեանքը իսկապէս տառապանք մըն էր, և մարդ ամէն օր մահուան հետ դէմ յանդիման կ'ապրէր։ Սակայն մեր նախնիք գիտցած են այս դժնդակ միջավայրին մէջ ալ գտնալ modus vivandi մը, և տեւել և տոկալ։

Ասիկա հերոսութիւն մըն էր, որ պէտք է երախտեօք յիշուի և ոչ թէ իրենց յիշատակին համար անարգանքի առիթ դառնայ։

Ֆիզիքական գոյութեան պահպանութիւնը՝ առաջին մտատանջութիւնն է որ պէտք է ունենան մեզի պէս փոքր ազգեր, որոնք չեն կրնար յաջողութիւնը անստոյգ և անապահով վախճանով արկածախնդրութեանց ձեռնարկել և արիւնալի փորձարկութեանց մղուիլ։ Դժբախտաբար այս ճշմարտութիւնները տակաւին չեն հասկցուած շատերու կողմէ այնքան զարհուրելի հարուածներէն յետոյ որոնք գրեթէ դիապաստ մեզի տապալեցին առանց սակայն գոյզն չափով մը դաստիարակելու։

Այդ արհամարուած հիները, այդ ամենադժնդակ ժամանամիջոցներուն մէջ իբր սեղանաւորները կուսակալներուն, խորհրդականի դիրք ձեռք բերին և շատ անգամ իբր պահանջատէր անոնց նկուն վիճակը օգտագործեցին, որոշ չափով մը մեղմացնելով անոնց խստութիւնները և սանձարձակ վայրագութիւնները, այնպիսի ժամանակներու մէջ, երբ օտարէն յոյս չի կար և Հայերը՝ իրենց սեփական միջոցներով եթէ խլրտելու ըլլային բնաջնջուելու վտանգին տակ էին։

Արդեօք իմաստութեան գործ մը պիտի ըլլա՞ր այն դժնդակ պայմաններու մէջ չգործադրել գոյութիւնը պահելու և կաշին փրկելու համար այն բոլոր հնարքները որոնք կը կիրարկէին այդ Հայ մեծամեծները, Ամիրաները, Չէլէպիները և Աղաները, չար օրերը անցնելու համար։ Եթէ անոնք այդ միջոցներուն չդիմէին արդեօք մտածուած է թէ ի՞նչ եղած պիտի ըլլար ազգը։ Ինչ որ այսօր եղաւ, անիկա պիտի կատարուած ըլլար քանի մը հարիւր տարի առաջ, և շատոնց դատարկացած պիտի ըլլար Հայաստան և Փոքր Ասիա իր Հայ բնակչութենէն։

Պէտք է անկեղծ ըլլալ ըսելու համար թէ այդ ազդեցիկ Հայերը որոնք պետական շրջանակներու մէջ իրենց դրամով կամ հնարիմացութեամբ, ըսենք նաև իրենց քծնիքով և շողոքորթութիւններով, կրցած էին դիրք մը ձեռք բերել, որոշ չափով մը Հայերու տառապագին կեանքին մէջ մեղմացումներ առաջ կրցած են բերել, մինչև որ Օսմ. պետութիւնը օտար ճնշումի տակ ընդգրկելով, գոնէ արտաքին ձեւերու մէջ և յաճախ ակամայ՝ եւրոպականացման ուղին, հպատակներու կեանքը բարելաւուեցաւ։ Հետեւաբար պէտք է ընդունիլ թէ շատ կարեւոր դեր ունեցած է ազդեցիկ Հայերու ձեռք բերած հեղինակութիւնը պետութեան վարիչներուն քով։ Արհամարուած կեավուրը ըլլալով հանդերձ, անոնք կրցան երբեմն հակազդել թրքական բարբարոսութեան՝ որ մոլեռանդութեան դիմակով կ'արտայայտուէր և սանձել խուժանային ախորժակները, որոնք սրուած էին միշտ հանդէպ ռայեային։ Այսպէս, թրքահայութիւնը, ԺԷ. և ԺԸ. դարերուն շատ բան կը պարտի իր Ամիրաներուն, Աղաներուն և Չորպաճիներուն։

Կեսարիոյ Հայերը եւս, որոնք իբր գործնական մարդիկ և վաճառականութեան ընդունակ տարր այնքան համբաւուած են, ունեցած են դրամին ոյժով ազդեցութեան և դիրքի տիրացած անձեր որոնք

նշանաւոր ծառայութիւններ մատուցած են իրենց ազգակիցներուն, յաճախ կեղեքումներու և հարստահարումներու միակ զէնքը եղող վարպետութիւններու դիմելով։ Ինքնապաշտպանութեան բնազդը կը գործէ միշտ և երբ ոյժը չի բաւեր ինքզինքն պաշտպանելու հոն ննեն-գութիւնը ինքնին կը ծնի։ Ասոր համար է որ յաճախ կեղեքումներ ու հարստահարումներ ամէն անուղիղ միջոցի կը դիմեն, իրենց կա-շին փրկելու համար։ Հայերը ընդհանուր կանոնէն բացառութիւն չէին կրնար կազմել։ Հետեւաբար պէտք չէ զարմանալ, երբ օրինակի համար, Հայերը չափազանց նիւթապաշտ կը դառնան, և դրամի տի-րանալու համար ամէն միջոցի կը դիմեն։ Դրամին կը ցանկան առա-ւելապէս անոր զօրութեան համար։ Դրամին տիրանալով անոնք կը կարծէին տիրանալ նաև տիրապետողներուն կամքին ամէն նեղ պա-րագայի հնչուն փաստով՝ կաշառքով խօսելով անոնց հետ։ Անոնք քծնիքներ ու շողոքորթութիւններ ալ ըրին, վասնզի ուրիշ միջոց չունէին, այդ արհաւրալից մթնոլորտին մէջ իրենց կաշին փրկելու և իրենց գոյութիւնը տեւականացնելու համար։

Սակայն բոլոր օրինաւոր և ապօրէն միջոցներու կիրարկու-թեամբ հեղինակութեան և ազդեցութեան տիրացած այդ Հայերը, պէտք է ըսել թէ, շատ քիչ անգամ դաւեցին իրենց Ազգին և Եկեղե-ցիին դէմ։ Ընդհակառակը յաճախ անոնք իբր սեղանաւոր, Թուրքէն շահեցան Հայ եկեղեցիին, Հայ աղքատին և Հայ դպրոցին նպաստելու համար։ Երբեմն իբր միւլթէզիմ իրենց ազգակիցներուն առջև իբր չա-րաշահներ և կեղեքիչներ նկատուեցան, սակայն նուազ չէին անոնք որ իբր յանձնառու, իբր կառավարութեան հայթայթիչ և կուսակալին ու տեղական էշրաֆի սեղանաւոր, պետական անտուկները կամ կուսա-կալը ու էշրաֆը տզրուկի պէս քամած են և յաճախ այդ «անիրաւ մա-մոնայէն» բաժին հանած են իրենց ազգին։

· Ձեռագրի մը (անթուական ճառոց գիրք մը) յիշատակարանը մեզի կը հասցնէ պատմութիւնը դրուագի մը որ Կեսարիոյ մէջ պատահած է և որ ցոյց կու տայ թէ ազդեցիկ Հայ մը ի՛նչ կրնար ընել իր հեղի-նակութեամբ ու ազդեցութեամբ։

Նախ ըսենք թէ իսլամական մոլեռանդութեան ստեղծագործած մէկ համոզման համաձայն, որ դաւանանքի մը ոյժը ստացած է, երբեք ներելի չէր քրիստոնեայի մը սպանութեան համար իսլամը ոչ թէ մահուամբ այլ նոյնիսկ կերպով պատժել(1)։ Իսլամ մոլեռանդութիւնը իր

(1) Պատմութիւնը կը յիշատակէ դէպք մը որ շատ գեղեցիկ կը պատկերացնէ այս մտայնութիւնը։ Ահմէտ Գ.ի Վէզիրը Ահմէտ փաշա սաստիկ կը խոշտանգէր քրիստոնեաները։ 1715ին Անգլիոյ դեսպանը խստիւ կը բողոքէ իր ծերունի քրիստոնեայ թարգմանին Թուրքի մը կողմէն ծեծուած ըլլալուն համար։ Ահմէտ փաշա դեսպանին ամենայն անտարբերութեամբ կ'ըսէ. «Երբ մահմետական մէկը քրիստոնեայ մը կը ծեծէ ես ի՞նչ կրնամ ընել»։ Դեսպանը կ'սպառնայ առեւտուրը դադրեցնել, այս պայմաններու մէջ անկարելի համարելով անոր շարու-նակութիւնը։ Եպարքոսը թերեւս շատ իրաւամբ կը պատասխանէ. «Օսմ. պետութիւնը պէտք չունի Անգլիացւոց վաճառականութեան։ Եթէ դուք մեկնիք, Ձեր տեղը ուրիշներ կու գան, սակայն դուք չէք մեկնիր» (տես Այվազովսքի, Բ. էջ 294-295)։



իշխողի արժանապատուութեան համար անարգանք կը համարէր իսլա-մի մը կախաղանին վրայ ճօճիլը քրիստոնեայ մը սպանած ըլլալուն համար, հոգ չէ սոխի մը համար սպանուած ըլլար այդ քրիստոնեան կամ իսլամը իր սրցուցած խանչէրը փորձելու համար՝ քրիստոնեայի մը գլուխը թռցուցած։

Այս անարդար մտայնութիւնը այնքան խորարմատ հիմ բռնած էր Թուրք ուղեղներու մէջ, որ 1909ին երբ Կիլիկեան եղեռնէն յետոյ, իբր թէ Սահմանադրական վարչաձեւին յարած և եւրոպականացած Թուրքիոյ Եպարքոսը Հիւսէյին Հիլմի փաշա, աչքերու փոշի փչելու համար իսլամ ջարդարարներէն մի քանին կախաղան բարձրացնել յանդգնեցաւ Մէպուսներու, արտաքոյ խորհրդարանին՝ անպաշտօն մէկ խորհրդակցութեան հետեւանօք տապալեցաւ։ Հիւսէյին Հիլմի փաշա-յին, ապահովաբար քաղաքագիտական նկատումներով քանի մը Թուրք ջարդարարներ, նոյնիսկ ամենազռեհիկ դասակարգէն, մահուան դա-տապարտած ըլլալը, իսլամական առանձնաշնորհներու հակառակ նկատած էին Սահմանադրական Թուրքիոյ ներկայացուցիչները և չէին ներած Եպարքոսին որ Հայ սպանած ըլլալու... փառքին համար մահուամբ պատժուէին քրիստոնեաներ։

Ահիկա կը կատարուէր Ի. դարուն մէջ, 200 տարի յետոյ մեր պատմելիք դէպքէն, ուր պիտի տեսնենք թէ ազդեցիկ Կեսարացի մը իր հեղինակութեամբ՝ թէև դժուարաւ և զոհողութեամբ, կախաղան բարձրացնել կու տայ իսլամ մը, Հայ մը սպանած ըլլալուն համար։

Արդարև Հաճի Կարապետի որդին Մահտեսի Խաչատուր Չէլէպի (որ Հաճի Աղա անունով ալ կը յիշուի) անուն հարուստ Հայ մը, որ 1701ին Տէրէվանքի Ս. Սարգիս վանքը նորոգած էր, 1708 Հոկտ. 26 Գշ. օրը «ի գալն քաղաքէն» վանք «խոցեցաւ... յումեմնէ եւ երեք օր ապրեցեալ վերափոխուեցաւ առ Քրիստոս...: Եւ յետ այսորիկ զՄահտեսի Խաչատուրն զար-կողն ըմբռնեցին եւ եդին ի բանտի եւ մնաց ի բանտին ՃԼԸ (=138) օր՝ շատ ստակ խարնեցին ոչ կարացին սպանանել զնա, եւ յետոյ Եղիա Չէլէպին Իստան-պօլոյ սայի էր ուղարկեալ փաշային թէ կախեա զնա եւ տեսեալ փաշան սա-յուն բերած թուխտն, եւ միւս օրն Մարտի ԺԱ (=11) օրն Ուրբաթ կախեաց զգողն, եւ այնպէս բարձաւ չարն իմիջոյ եւ ոչ ետես փառսն Աստուծոյ»:

Կ. Պոլիսէն յատուկ սուրհանդակով մահավճիռ գործադրելու հրա-ման դրկել տուող Եղիա Չէլէպին ո՞վ որ ալ է, ինչպէս կը տեսնուի հեղինակաւոր անձ մըն է որ իր ազդեցութեամբ կը յաջողի երկրին իսկ ծառայել, պատիժի ենթարկել տալով ոճրագործ մը և կերպով մը մաքառելով անարդար մտայնութեան դէմ իսլամին թէ ինքն արտօն-ուած է անպատիժ սպանելու քրիստոնեան, կը բաւէ որ իր քէյֆը այն-պէս ուզէ։

Ասիկա յաջողութիւն մըն էր որ սակայն ամէն առեն չունեցան կամ չկրցան ունենալ Հայերը, թէև իբր թէ երկիրը հետզհետէ կ'ընդ-գըրկէր Եւրոպական կարգերը և բարեկարգական տնօրինութիւններ իրարու կը յաջորդէին, ամէնքն ալ երկրին մէջ նոր կարգեր և կար-գաւորութիւններ հաստատելու ոչ-անկեղծ տրամադրութեամբ։

Եթէ գտնուէին ուրիշ ազդեցիկ Հայեր ալ որ իրենց ուժով և հե-ղինակութեամբ կարենային պատժել տալ իսլամները՝ քրիստոնեայ սպանած ըլլալուն համար ինքնին արդէն դէպի հաւասարութիւն և դէպի անխտրականութիւն քայլ առնուած կ'ըլլար, և կամաց կամաց

Թրքական վարչութեան մէջ մտած կ'ըլլար այն մտայնութիւնը որ մենք կ'ուզէինք որ անիկա ունենար:

Դժբախտաբար այս իմաստութիւնը՝ որ հիններուն էր նորերունը չեղաւ:

Դիրքը և ազդեցութիւնը իրենց բարերար դերն ունէին ապրեցնելու Հայերը, որոնք յաճախ իրենց գոյութիւնը պահպանած են պարզապէս իրենց նիւթական դիրքին և ազդեցութեան շնորհիւ, որ ամէն անգամ անիրաւ մամոնային վրայ չէր հիմնուած, այլ երբեմն ալ բարոյական հեղինակութեան կամ այլ աննիւթական հմայքի մը:

Ինչպէս տեսնուեցաւ Կեսարիան իր շրջակայքին հետ յարաբերութեան դնող ճամբաները ո՛չ մէկ ապահովութիւն կը ներկայացնէին գլխաւորապէս Տաւրոսեան լեռնաշղթային վրայ բոյն դրած Թուրքմէն, Աւշար և այլ աւազակային հակումներով ցեղերու և Գօզանեանց իշխանութեան պատճառով, որոնք բռնած էին բոլոր լեռնային անցքերը և ազատ երթեւեկ թոյլ չէին տար և յաճախ կը կողոպտէին ճամբորդները:

Նոյնքան անապահով էր դէպի Սեւ Ծով և դէպի Կ. Պոլիս տանող հիւսիսային ճամբան, վասնզի հոն ալ բռնացած էին Ջափան-օղլուները, մինչեւ ԺԹ. դարուն կէսերը:

Երեւակայեցէք թէ գտնուած են հնարիմաց Հայեր որ վայրենի և ո՛չ մէկ կարգին հնազանդող այս աւազակներուն պատկառանք ներշնչած և անոնց վրայ հեղինակութիւն ձեռք բերած են:

Այս կարգի դէմք մըն էր օրինակի համար Թոմարզայի Ս. Աստուածածին վանքի վանահայրերէն Թոմարզացի Բարսեղ վրդ. Թորոսեան, որ այս պաշտօնը վարած է 1838էն 1852:

Ասիկա Տաւրոսեան անցքերու մէջ որջացած ցեղերուն վրայ այնքան մեծ հեղինակութիւն ձեռք բերած էր որ կառավարութիւնն իսկ անոր կը դիմէր յաճախ խօսք հասկցնելու համար անոնց:

Ասոր մէկ կարկառուն և անժխտելի փաստը կու տայ, Մոլթքէ (յետոյ գերման Մարէշալ) որ իբր մարզիչ Օսմ. բանակին, 1838ին Փոքր Ասիոյ մէջ կատարած է պտոյտ մը:

1838 Նոյեմ.ին Մալաթիայէն իր գրած նամակին նայելով, Մոլթքէ Գօնիայի և Կեսարիոյ կողմերը ճամբորդած պահուն, կ'ուզէ լեռներու մէջէն ուղղակի ճամբայ մը գտնել դէպի Մալաթիա: Իրեն կ'ըսեն թէ այնպիսի ճամբայ մը չի կայ և բոլոր անցքերը բռնած են Աւշարները, այնպէս որ ստուար զօրախումբ մը պէտք է իր հետը առնէ, ապահով ճամբորդելու համար:

Գօմանտան Հաճի Ալի փաշա Տէվէլիի միւսէլլիմին (կառավարիչ) ուղղուած յանձնարարական մը տուած էր Մոլթքէի, որով կառավարիչը անձամբ պատասխանատու կը բռնէր Բրուսիայի սպային ապահովութեանը համար:

Միւսէլլիմը կը յայտարարէ թէ պատասխանատուութիւնը ինք վրան չ'առներ, որովհետեւ ճամբաները շատ անապահով են, աւազակները կը վխտան ամէն կողմ, ուստի իրեն խորհուրդ կու տայ դիմել Թոմարզայի Հայ եպիսկոպոսին, որ միակ ազդեցիկ անձն էր երկրին այն կողմերը, և եթէ այս Հայ եկեղեցականը յանձնարարական տայ իրեն, Մոլթքէ վստահ կրնայ ըլլալ որ Աւշարները բան չեն ըներ իրեն:



Մինչեւ Թօմարզա, միւսէլլիմն ստուար զօրախումբ մը կ'ընկերացնէ Մոլթքէի:

«Զարմացայ տեսնելով որ մահմետական մը այսպէս կը խօսէր Հայ եպիս-
կոպոսի մը վրայ, որ «կեավուր» մըն էր յուկ եւ ընդունեցի իր առաջարկը: Իմ
թարգմանս որ ան ալ Հայ է՝ իսկոյն խմբագրեց հայերէն ազատ անձագրի հրա-
ւակերտ մը, որուն նայելով բոլոր Օսմ. տէրութեան մէջ Սուլթանէն եւ Տէվէլիի
Միւսէլլիմէն ետքը ինձմէ աւելի մեծ մարդ չկայ եղեր, եւ Միւսէլլիմն իր կնի-
քով զմռեց Թօմարզայի Հայոց առաջնորդին ուղղուած այս յանձնարարականը:
16 զօրականներ ինձի կը հետեւէին...:

Մեր ճամբուն վրայ, կեավուրները վստահութեամբ կը նայէին մեզ, որովհետ-
եւ իրենց հոգեւոր հովիւին պաշտպանութեան տակ կ'զգային թէ վախնալու
բան մը չունէին, մինչ ուրիշ ժամանակ մերինին նման զինուորական այցելու-
թիւն մը կեղեքումի նշանը պիտի տար: Եպիսկոպոսը անցեալներն արտաւանք մը
րտեր է Աւշարներուն դէմ, եւ անոնցմէ քանի չափ ձիաւոր բռնելով, իր վան-
քին մէջ բանտարկեր է:

Թարգմանս առջեւէն գնաց, իր հրաւակերտ յանձնարարականով, ի հարկին
բերանացի բացատրութիւններ ալ տալու: Ժայռի մը նեղքուածքին մէջ պարս-
պապատ քանի մը տնակներ տարին մեզ, հոն էր վանքը եւ առաջնորդին բնավայրը:
Բակին մէջ զիս ընդունեց լաւ սնած մարդու տիպ փոքրահասակ մէկը, որ նոյն
ինքն եպիսկոպոսն էր: Շատ շնորհալի ընդունելութիւն մը ըրաւ ինձի, խահուէ,
լիքէօր եւ չպուխ հրամցուց: Իր աշխարհային իշխանութեան սկզբնապատճառը
հարցուցի իրեն: Պատմեց թէ 10 տարի առաջ Թօմարզայի բոլոր ժողովուրդը
միտքը դրած էր գաղթել, Թուրք իշխանութեան անհանդուրժելի կեղեքումէն ա-
զատելու համար: Եպիսկոպոսը միջամտեց, համոզեց ժողովուրդը որ կենան, եւ
տուրքերուն գանձումն իր վրայ առաւ: Որովհետեւ շատ մը մահմետականներ կը
բնակին հոն Հայոց քովիկը, ձեւերը փրկելու համար անոնց գլուխը դրուեցաւ
«վօյվօտ» մը, որ սակայն բոլորովին Հայոց առաջնորդին իշխանութեան տակ է:
Եպիսկոպոսն յարեց թէ Աւշարներէն չվախնար, որովհետեւ ինչպէս ուրիշ ժողո-
վուրդներ, Աւշարներն ալ ամբողջովին աւազակներէ բաղկացած չեն: Իրաւ,
շատ մը չար մարդիկ կան անոնց մէջ, բայց անոնք ինչպէս օտարականներու,
անանկ ալ իրենց ցեղին թշնամին են, որ միշտ կը հալածէ կը վտարէ զիրենք»:

Արդէն, տարւոյն այս ձմեռնային եղանակին մէջ, Աւշարները դէպ ի «խո-
տունկ հովիտը», այսինքն դէպ ի Ատանա իջած կ'ըլլան, ըսաւ:

Հետեւեալ օրն Էֆրէֆ հասայ: Իմացայ որ Մարաշի կառավարիչ Սիւլէյման
փաշա Կոկիսոն կը գտնուի, որ Ալպիստանի կողմն ամէնէն մօտ գիւղն է: Բայց
Կոկիսոն տակաւին 22 ժամ հեռի էր, եւ մէկ օրէն կարելի չէր այնչափ ճամ-
բայ կտրել գերմանական ձիերով, մանաւանդ որ ճամբուն վրայ ո՛չ գիւղ, ո՛չ
տուն, ո՛չ պատսպարան կար: Գոհացայ ուրեմն այս անարկու Աւշարներուն մէջ
գտնուելով, եւ ինչպէս որ առջի գիշերն Հայոց եպիսկոպոսի մը յարկին տակ
ննջեր էի, հետեւեալ օրն անցուցի Թիւրքմէն իշխանի մը վրանին ներքեւ»:

Ահա Հայ եկեղեցական մը որ կարեւոր շրջանակի մը մէջ հեղինակութիւն ձեռք կը բերէր, իր հնարիմացութեամբ, և պատկառելի կը դառնար և տեսակ մը՝ գազանազուսպի դեր կը կատարէր հանդէպ վայրագ և աւազակ ցեղերու:

Այսպէս Հայերը, դրամի ուժով կամ այլ հմայքով մը, ձեռք բերելով հեղինակութիւն մը, ո՛չ միայն քաշքշեցին իրենց գոյութիւնը այս դժոխք երկրին մէջ, այլ պահպանեցին իրենց ազգային ու եկեղեցական կեանքը:

## ԺԳ.

## ԿԵՍԱՐԻՈՅ ՎԵՐՋԻՆ ԳԱՂԹԱԿՈՐՈՒՄԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԷՆ ԵՒ ԻՐԵՆՑ ՎԵՐՋԻՆ ՓԱՅԼՆ ՈՒ ԱՆԿՈՒՄԸ

*Ընդհանրապէս Հայ ցեղին և մասնաւորապէս Կեսարացի Հայուն ի պատիւ պէտք է ըսել թէ անոնք ունեցած են աննկուն կորով ու անսահման համբերատարութիւն այս դժխեմ ու դաժան միջավայրին մէջ ո՛չ միայն ապրիլ կարենալու այլ նաև այսքան եղեւէջներու, յուզումներու, փոթորիկներու և տակնուվրայութեանց տոկալու և կուրծք տալու։ Այնպէս որ անոնք մեծ թուով կոտորակուեցան սակայն միշտ տոկացին ու մնացին և կարծես թէ ինքզինքնին նորոգեցին, ամէն անգամ որ պզտիկ անդորրութիւն մը վայելեցին, նորէն ասպարէզ գալու և իրենց գոյութիւնը զգալի ընելու համար։*

*Գլխաւոր ոյժը որ Հայերը Կեսարիոյ մէջ պահած է և նոյնիսկ հոն քաշած է ուրիշ տեղերէ, Օսմ. տիրապետութեան այս դժնդակ օրերուն, ուրիշ բան չէր կրնար ըլլալ եթէ ոչ Կեսարիոյ վաճառաշահ դիրքը, որ այս քաղաքին պատմութեան մէջ ամէնէն խորունկ գիծը եղած է։*

*Օսմ. տիրապետութեան շրջանին անիկա պահեց դարձեալ իր առեւտրական կարեւորութիւնը։ Անիկա պատճառ մըն էր որ քրիստոնեայ ձեռներէց առեւտրականներ, շահասիրաբար կապուած մնային այս քաղաքին, հակառակ միջավայրին անհանդուրժելի հանգամանքին։ Բայց թէ ուրիշ խաղաղ ու անդորր միջավայրերէ մարդիկ կրնային գտնուիլ, Կեսարիա գալու յօժարող, կամաւորապէս, շատ տրամաբանական չէ, ուստի այս տեսակ իրողութիւն մը ենթադրելի չէ։ Սակայն կայ իրողութիւն մը որ պէտք է մեկնել։ Կեսարիա Պարսկաստանէն Հայ գաղթականներ ընդունած ըլլալը որոշ է մասնաւորապէս ԺԶ.-ԺԸ. դարերուն։*

*Ի՞նչ առթիւ սակայն անոնք կու գային։ Անոնք ապահովաբար բնակիչներն էին այն շրջաններուն որ Թուրք և Պարսիկ պատերազմներուն պատճառով կը դատարկացուէին բնակչութենէն, ըստ ժամանակին պատերազմական մեթոտներուն, կամ փախստականներ էին, որոնք զզուած պատերազմի արհաւիրքներէն, կամաւոր կերպով կը փոխադրուէին պետութեան համեմատաբար անդորր շրջանակները — որոնց մէջ կարելի է համարել Կեսարիան — որոնք բաւական հեռու էին Թուրք և Պարսիկ պատերազմներու թատերավայրերէն։*

*Պատմութիւնը կը յիշատակէ մասնաւորապէս իբր պատերազմական արարք Թուրքերու կողմէ կիրարկուած բազմաթիւ տեղահանութիւններ կամ բռնագաղթեր։ Այսպէս,* 1513*ին Թուրքերը Դաւրէժ քաղաքին արհեստաւոր բնակիչները, որոնք մեծամասնութեամբ Հայեր էին, բռնագաղթի ենթարկած են և բերած են Փոքր Ասիա և մանաւանդ Կ. Պոլիս։* 1534*ին երբ Գանունի Սուլթան Սիւլէյման Պարսից ձեռքէն գրաւած է Վասպուրականը և անոր մայրաքաղաքը՝ Վանը, այդ կողմերէն պետութեան կեդրոնը բերած է բռնագաղթով բնակչութեան մէկ մասը։* 1548*ին և* 1554*ին դարձեալ նոյն Սուլթանը Արա-*



*րատէն և Վասպուրականէն (Զաքարիա Սարկաւագ, Ա. հտ.* 11) *և Երեւան և Նախիջեւան քաղաքներէն ու Արցախի նահանգէն շատեր գերութեան ենթարկած և բազմաթիւ Հայեր բերած է Կ. Պոլիս և Փոքր Ասիա։*

*Չըլտըրի ճակատամարտէն* (23 *Յուլիս* 1578) *յետոյ երբ Օսմ. բանակներ կը մտնեն Կովկաս միայն Երեւանէն և շրջակայքէն* 60.000 *անձեր կը փոխադրուին Կ. Պոլիս և անոր շուրջը (Զամ. Գ.* 529)։

*Իսկ այս ճակատամարտին յաջորդող երկարատև պատերազմներու շրջանին, որ մինչև* 1590 *տեւեց, բնակչութեան տեղահանութիւնը միշտ գործադրուած է։ Պատերազմին հետ զուգընթաց և անոր իսկ իբր հետեւանք Հայաստանը* 1579*ին ենթարկուեցաւ սաստիկ սովի և ժանտախտի համաճարակի մը, որոնց պատճառած աւերը և տառապանքը նկարագրած է Յովհաննէս Վրդ. Ծարեցի (տես* Դաւրիժեցի, 609-611)։ *Այս պատճառով եւս ոչ նուազ Հայեր իրենց տունը, տեղը և ստացուածքը լքելով ապաստանած են աւելի անդորր և ապահով վայրեր։ Կեսարիա ալ եկողներ եղա՞ծ են։ Պատմութիւնը լուռ է այս մասին։ Դժբախտաբար յիշատակարաններն ալ լուսաբանող տողեր չունին։ Սակայն հաւանական է որ աւելի կամ նուազ թուով, այս տեղափոխուածներէն մասնիկներ, Կեսարիա ապաստանած ըլլան կամ հոն հաստատուած։*

*Սակայն եթէ հաստատուած ալ են, պէտք է ըսել թէ անոնք ալ Կեսարիոյ վաղեմի բնակչութեան հետ, իրենք ալ լքած պէտք է ըլլան Կեսարիան, Ճէլալիներու յարուցած խառնակութեանց միջոցին և Կ. Պոլիս ապաստանած (տես վերը* 643-647), *որով գրեթէ Կեսարիա դատարկացած է, ինչպէս տեսնուեցաւ։*

1635*ին Մուրատ Դ.ի վերադարձի հրամանէն յետոյ որքանը հեռացողներէն դարձած ըլլալը յայտնի չէ, ինչպէս ըսի, սակայն ինչպէս տեսնուեցաւ մեծ թիւ մը կարելի չէ ենթադրել։ Միայն որոշ է թէ Պաղտատի գրաւումէն — որ Սուլթան Մուրատ Դ. անձամբ կատարեց* 1638 *Դեկտ.* 25*ին — յետոյ,* 1639*ին Օսմ. և Պարսիկ պետութեանց միջև կնքուեցաւ եռեսնամեայ այլ սակայն* 80 *տարի տեւող* «բարիշութիւն» (= *հաշտութիւն*), «վասն որոյ ամենայն աշխարհք արեւելեայք եւ արեւմտեայք օրհնեն եւ ողորմի տան երկուց թագաւորացն զի կեան ի խաղաղութեան. զի նախ քան զբարիշութիւնն ի փախըստեան եւ թափստեան կային, ի յափշտակութեան եւ յաւարառութեան, ի գերութեան եւ ի սպանութեան, ի սով եւ սուր եւ մանաւանդ ողորմելի ազգս Հայոց» (Դաւրիժեցի, 576):

*Կեսարիոյ Հայերը որոնք Մուրատ Դ.ի հրամանով իրենց իսլամ բնակակիցներուն հետ դարձուած էին իրենց երկիրը խաղաղութեան այս երկարատև ժամանակին ուր երկիրը ազատ կը մնար աշխարհաւեր պատուհասներէն, մրջիւնի համբերատարութեամբ մը կը վերակազմեն իրենց քայքայուած օճախները, գործը և տնտեսութիւնը.*

*Այս մօտաւորապէս դարու մը խաղաղութեան ժամանակամիջոցը կերպով մը վերակազմութեան շրջան մը կ'ըլլայ և Կեսարիոյ Հայերու մէջ երեւան կու գան ազդեցիկ Հայեր, որոնք իրենց ձեռք բերած դիրքով և հեղինակութեամբ օգտակար կը դառնան իրենց համայնքին։ Կեսարիան իբր առեւտրական կեդրոն մը Փոքր Ասիոյ սիրտին վրայ, կարաւաններու ճամբուն քառուղիին վրայ զետեղուած, Հայոց համար կ'ընծայէ պատեհութիւններ յաջողութեան և արդարև այս ժա-*

մանակամիջոցէն սկսեալ Կեսարիոյ Հայերը կատարել կ'սկսին կարեւոր դեր մը Փոքր Ասիոյ առեւտրական շարժման մէջ։ Իրենց նիւթական բարգաւաճումը և յաջողութիւնը, ինչպէս նաև երկրին խաղաղութիւնը ո՛չ միայն գաղութին ինքն իր մէջ զարգացման ու աճման կը նպաստէ, այլ ապահովաբար կը հրապուրէ նաև ուրիշ վայրերէ Հայեր, որպէսզի հոն գաղթեն և հաստատուին, թէև այս մասին ոեւէ որոշ վաւերագիր կամ յիշատակութիւն չունինք։

Երբ 80 տարուան խաղաղութենէ մը յետոյ 1725ին դարձեալ բորբոքեցան Թուրք և Պարսիկ պատերազմները, Թուրքերը դարձեալ գործադրեցին իրենց սովորական մեթոտները և պարսկական հողերէն բռնագաղթով բազմաթիւ մարդիկ փոխադրեցին Փոքր Ասիա և Կ. Պոլիս (Զամ. Գ. 783. և Այվազովսքի Բ. 324)։

Եւ որովհետև 1725ին վերանորոգուած Թուրք և Պարսիկ պատերազմները մէկ բախումով մը վերջ չգտան, և երկար տեւեցին, այդ երկար շրջանին շարունակուեցան այս բռնագաղթերը։

Այս շրջանին բռնագաղթի կամ տեղափոխութեան ենթարկուած են նաև բազմաթիւ Հայեր, վասնզի այս եռիւներուն մասնակցած է նաեւ Դաւիթ պէկ Սիւնեցի, իբր Պարսից պետութեան հովանաւորութեան տակ գտնուող անկախ իշխան մը։ Այս պատճառով Թուրքերը գրգռուած են Հայոց դէմ և այնքան խստութեամբ Հայերը բռնագաղթի ենթարկած են որ Կ. Պոլսոյ Պատրիարքը՝ Յովհաննէս Կոլոտ —իր ժամանակին ամէնէն նշանաւոր դէմքերէն մին— ստիպուած է բողոքել Մեծ Վէզիր Իպրահիմ փաշայի որ գիջած է Հայոց Պատրիարքին և դադրեցուցած՝ բռնագաղթը (Այվազովսքի, Բ. 324)։ Հաւանական է մտածել թէ այս շատ մեծ թուով տեղափոխուած Հայերէն մաս մը բերուած է Կեսարիա, իբր անատոլեան կարեւոր կեդրոն մը, կամ անոնք նախապէս ուրիշ տեղեր հաստատուելէ յետոյ, քիչ քիչ Կեսարիա եկած են, առեւտրական յարմարութիւններէն հրապուրուած։

Նոյնպէս կարելի է խորհիլ թէ 1725ին վերանորոգուած Թուրք և Պարսիկ պատերազմներու աղէտներէն խուսափելու համար, շատ մը Հայեր իբր պատերազմական գօտիէն հեռու և ապահով ու առեւտրական յաջողութիւններու հաւանականութիւն ներկայացնող վայր մը՝ Կեսարիա ապաստանած ըլլան։ Պարսկաստանի ներքին խռովեալ վիճակն ալ ոչ նուազ պատճառ մը կրնար ըլլալ, ԺԸ. դարուն Հայերու կամաւոր հեռացումին, իրենց երկրէն։ Հետեւաբար բոլոր այս պատճառները, առանձին առանձին կամ հաւաքաբար պատճառ եղած են Պարսկաստանէն Հայերու Կեսարիա տեղափոխութեան, իրողութիւն, որ Կեսարիոյ Հայոց շատ մը ընտանիքներուն մէջ յորդւոց որդի փոխանցուած կենդանի աւանդութիւն մը կը հաստատէր։

Մասնաւորապէս Համատանէն բերուած եօթը ընտանիքներու զրոյց մը յաճախ յեղյեղուած է, Հայ Կեսարական շրջանակներու մէջ։ Իբր թէ այս եօթը ընտանիքներէն չորսը՝ նախահայրերը Թէքէեան, Զարդարեան, Ֆրէնկեան և Արզըեան ծանօթ ընտանիքներուն, Կեսարիա քաղաքը հաստատուած են, և երեքը՝ նախնիքը Կիւլպէնկեաններու, Խուպէսէրեաններու և ուրիշ ընտանիքի մը, բնակած են Թալասի մէջ (Վահան Թէքէեան, տես Ժողովուրդի Ձայն Թ. 832)։

Պարսկաստանէն տեղափոխուած հայերու կարեւոր հատուածի մը



գոյութիւնը կը հաստատուի նաև ժողովրդական աւանդութիւններով, կարգ մը Հայ գիւղերու մէջ տիրող բարքերով, անձերու անուններուն մէջ պարսկերէն անուններու գոյութեամբ(1), ինչպէս նաև խօսուած լեզուին, նոյնիսկ 'ի կիրարկութեան եղող թուրքերէնին մէջ գոյութիւն ունեցող պարսկերէն բառերու և բացատրութեանց յայտնի ու չեջտուած առատութեամբ, որ ուրիշ բանի հետեւանք չէր կրնար ըլլալ եթէ ոչ Կեսարիա տեղափոխուած պարսկահայ նորագոյն գաղթականներու խումբի մը գոյութեան։

Ցետոյ չափազանց ուշագրաւ է որ Հայերը Կեսարիոյ մէջ մենաշնորհն ունէին կարգ մը արհեստներու որոնք պարսկական էին, ինչ-



ԿԵՍԱՐԻՈՅ ՔԱՂԱՔԻՆ ՄԷԿ ՄԱՍԸ

պէս ոսկերչութիւն, գորգագործութիւն կամ ճիճիմ գործել, ֆիլիմ և սէճճատէ պատրաստել, սաւեգործութիւն, շապիկ, գօտի և կտաւ գործել կամ տարազագործութիւն, և փայտէ շինուած տեզկեահներու շինութիւն եւայլն։

Հայ օրիորդներու քէրկէֆի վրայ պատրաստած հարսին գլխին եազմաները, բէչէները, ուլունգները (պօնճուգ), ինչպէս նաև ոսկերիչներու փորագրած ծաղիկներու ձեւերը և ճաշակը, բացորոշ պարսկական են, ինչպէս առօրեայ գործածութեան մէջ եղած ծխատուփերը, սիկարէթի փողերը, դաշոյններու և խանջէրներու կոթերը, կեռակուրի և սուրճի գաւաթները, ամանները, հարսերու մանեակները (կէրտանլըք) և թագկային զարդարանքները և արծաթէ գօտիները։

(1) Կեսարիոյ մէջ շատ գործածական են Միհրան, Շապուհ, Միհրդատ, Տրդատ, Մերուժան, Շահին Աղաբէգ եայլ պարսիկ ծագումով արական անունները, ինչպէս Կիւլիզար, Շահնար, Սէնկիւլ, Նէվրուզ, Էլմաս, Բերուզ, Նէվրիկ, Կիւզէլ, Ջիւմպիւլ իգական անունները՝ նոյնպէս պարսիկ ծագումով։ Հոս աւելորդ չըլլայ դիտել տալ թէ մասնաւորապէս աղջիկները առած էին պարսիկ կեղծ անուններ, և կը կոչուէին Շատի, Խպսի, Րուհի, Էկեահ, Նատիրի եւայլն։ Եւ ուշագրաւ է որ անոնք յաճախ կ'երգէին պարսկերէն։

Անոնք վերջին գաղթականներն էին որ աւելի դժբախտ շրջաններէ կ'ապաստանէին Կեսարիա, ուր իրենց չէր սպասեր ո՛չ կատարեալ խաղաղութիւն և ո՛չ ալ իրական հանգիստ։

Ճիշդ է թէ պատերազմական տագնապները կը դադրէին, սրածութիւններ չէին գործադրուիր, ամբողջ գաւառներ չէին դատարկանար, և լուռ գերեզմաններու վերածուիր, բայց Թուրքերը կը շարունակէին արիւն-արցունք թափել տալ Հայոց և թունաւորել անոնց հոգին և միտքը։ Պաշտօնատարներու կեղեքումները, բռնակալներու խժդժութիւնները, և Թուրք ժողովուրդին հարստահարութիւնները, իբր Օսմ. վարչութեան աղն ու պղպեղը կային ու կը մնային, ինչպէս բոլոր Թուրքիան նոյնպէս նաև Կեսարիան դարձնելով դժնդակ միջավայր մը, ուր Հայերը ապրիլ հարկադրուած էին հազար և մէկ զգուշութիւններով, և մղել կեանքի անողոք պայքար։ Անոնք ո՛չ միայն իրենց անձերը պահպանելու, իրենց ընտանիքներու օրապահիկը հայթայթելու, և նոյնիսկ ապագան ապահովելու համար, այլազան զրկանքներու և զարմանազան նուաստացումներու կ'ենթարկուէին, այլ բոլոր հնարաւոր միջոցներով կը մղէին ազգային գոյապայքար մը, ջանալով փրկել, միայն կրաւորական դիմադրութեամբ մը, ինչ որ կարելի էր, այն ազգային կամ հասարակական բարոյական ու նիւթական արժէքներէն, կրօնքէն, դպրութենէն, ուսումէն, ինչպէս բարքերէն, սովորութիւններէն, և աւանդութիւններէն, որոնք իրենց նախնիքներէն ժառանգ ստացած էին։

Հոս է որ Կեսարացի Հայը մասնաւորապէս կ'արժէքաւորուի և անիկա կը փայլի իր առանձնայատկութիւններով և նկարագրով, որոնք կը կերտեն իր համբաւը իբր առեւտրականի, իբր ճարպիկ վաճառականի և իբր յաջողակ արհեստաւորի, և մանաւանդ իբր աւանդապահ, ազգասէր և կրօնապահ Հայու։

Սակայն հոս չեմ ուզեր Կեսարացի Հայերու թրքական իշխանութեան տակ ցոյց տուած ճիգերու և ընդունակութեանց, իրենց անհատական ու հաւաքական կեանքին ու կենցաղին, գործունէութեան և ձեռք բերած յաջողութիւններուն վրայ խօսիլ, առանձին քննութեան առարկայ ընելու համար Կեսարահայերու նկարագիրը իբր անհատ և իբր հաւաքականութիւն, և ցոյց տալու՝ իբր քաղաքացի՝ իրենց ապրած երկրին և իբր Հայ՝ իրենց պատկանած ազգին մատուցած ծառայութիւնները, ինչպէս նաև ներկայացնելու իրենց ներքին ընտանեկան կեանքը, բարքերը և սովորութիւնները, ստեղծագործ տաղանդը, նախաձեռնարկ ոգին և յաջողութիւններն ու նուաճումները, հաւասարապէս շատ մը մարզերու մէջ, ինչպէս առեւտրականին, վաճառականականին, սեղանաւորականին, արհեստներու և արուեստներու, ինչպէս նաև իմացականին ու մտաւորականին մէջ։





# Գ. ՄԱՍ

# ԿԵՍԱՐԻԱ
# ԵՒ
# ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա.

## ԿԵՍԱՐԻԱ ՔԱՂԱՔԸ

### Ա.

### ՔԱՂԱՔԸ ԵՒ ԻՐ ՇՐՋԱԿԱՅՔԸ ԻԲՐ ԲՆԱԿԱՎԱՅՐ

Պատմական այն տողանցումին մէջ որ կատարեցի ցոյց տալու համար Կապադովկիոյ անցեալը և հոն ապրող Հայ բնակչութեան կեանքը զանազան իշխանութիւններու տակ, տեսնուեցաւ արդէն թէ անյիշատակ ժամանակներէ սկսեալ Արգէոսի շուրջը գտնուած է մայ- րաքաղաք մը կամ մեծ կեդրոն մը որ գաւառին սիրտը եղած է, և որ վերաշինդարերու ընթացքին մի քանի անգամ կործանած՝ սակայն վերաշինուած է, միշտ պահելով իր դիրքը և կարեւորութիւնը մասնաւորապէս իբր առեւտրական կեդրոն։

Այսօր ալ՝ զանազան անուանափոխութիւններէ, մի քանի անգամ կործանելէ և շինուելէ, անկումներէ և բարձրացումներէ և պզտիկ շրջանակի մը մէջ անշուշտ, քանի մը տեղափոխութիւններէ յետոյ, գոյութիւն ունի մայր-քաղաք մը որ կը կոչուի Կեսարիա, Գայսէրի կամ Ղայսէրի, և կը գտնուի 38°, 42′, 52″ հիւսիսային լայնութեան և 33°, 2′, 36″ արեւելեան երկայնութեան վրայ, ճիշդ Փոքր Ասիոյ կեդրոնավայրը, առեւտրական ուղիներու խաչաձեւուած մէկ տեղը, գտնուելով Եգէականէն և Վոսփորէն Հայաստան և Միջագետք գացող և Սեւ ծովը Խասսի ծոցին միացնող, ճամբաներուն վրայ։

Կեսարիա քաղաքը հաստատուած է ընդարձակ և քարուտ դաշտագետնի մը վրայ որ շատ կը նմանի ցամքած լճակի մը որուն մնացորդները ըլլալ կը թուին իր շուրջը գտնուած ճահիճները։ Աւանդութիւն մը որ վերը յիշուեցաւ (տես էջ 7) և որ թերեւս հնագոյն դարերէն եկած հասած է մինչև մեր օրերը, կարծես կ'արդարացնէ այս տեսութիւնը։ Թէև այդ աւանդութիւնը արձագանգը կրնայ ըլլալ նաև Ստրաբոնէն պատմուած այն փորձին որ Արքեղայոս, Կապադովկիոյ թագաւորը, ըրած էր ծովանման լիճ մը դարձնելու այդ շրջա-

նակը, փակելով թումբերով Մելասի (Դարա-Սուի) ու Կարմալասի (Զամանթի Սու) ընթացքները (տես վերը, 216–217)։

Կեսարիա հիմնուած Փոքր Ասիոյ մէջտեղը բարձրացող ամենաբարձր լերան, Արգէոսի ստորոտը, դաշտի մը մէջ, հարթավայրի մը բոլոր անպատեհութեանց ենթակայ է, առանց օգտուելու անոր յատուկ եղած առաւելութիւններէն։

ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ

Զիւնապատ ու ջրառատ լեռնաշարի մը հովանին վայելելուն հակառակ, դաշտն ո՛չ միայն բարեբեր չէ, այլ և իր բորակային հողը չափազանց չոր և աղի է, այնպէս որ իր արտադրած բորակը (կիւկէրչիլէ, salpêtre) որ վառօդի շինութեան համար պետական մենաշնորհ



է, չի փոխարիներ հողագործութեան կորուստը (Բիւզանդ Քէչեան, Բիւզանդիոն, Թ. 5582)։

Թէև ծովէն 1100 մեդր բարձր է, բայց նոյն մակերեւոյթէն 3000 մեդր բարձր Արգէոս իր հսկայ զանգուածով կը փակէ Կեսարիոյ օդը, և զայն միշտ մշուշապատ վիճակի մէջ կը պահէ, ինչ որ հեռուէն Կեսարիոյ մօտեցող ճամբորդին ուշադրութիւնը կը գրաւէ առաջին նայուածքով (Նոյն)։

Հայ բազմահմուտ հրապարակագիրին՝ — որ իր մանկութեան օրերը բախտ ունեցած է ապրելու Կեսարիա — Արգէոսի վերագրած այս ըր բախտ ... կը հերքէն ըսելով թէ այդ լեռը կը պաշտպանէ մասամբ Կեսարիան յաւիտենական ձիւնեղէն պատուարով մը, հարաւային տաք հովանքներու դէմ (Vital Cuinet, Turquie d'Asie, Ա. հտ. 308)։

Կեսարիա, ինչպէս բոլոր լեռնային երկիրները, ենթակայ է կլիմայական խիստ փոփոխութիւններու։ Տեսնուած է որ հարիւրամանեայ ջերմաչափը հինգ օրուան մէջ + 21°էն — 10°ի իջնայ։

1887ին, 15 Յունուարէն 1 Փետրուար հինգետասնօրեակին մէջ, բարձրագոյն ջերմութիւնը եղած է 0° և նուազագոյն՝ — 10°, բացառաբար 23 Յունուարին, ջերմաչափը իջնալով — 20 1/2°ի (Նոյն)։ Կեսարիոյ մէջ ձմեռը երբեմն այնքան սաստիկ կ'ըլլայ որ արջեր և գայլեր, ձիւնէն հալածուած կ'իջնան քաղաք և անոր փողոցներուն մէջ կը թափառին։

Իսկ ամառը ջերմաչափը կը բարձրանայ յաճախ +33°ի, բայց անկէ աւելին շատ քիչ անգամ պատահած է։

Թէև V. Cuinet (Նոյն, էջ 309) կլիման բաւական չոր և առողջ ցոյց կու տայ և ժողովուրդին մէջ տարածուած յօղացաւը կը վերագրէ, մանաւանդ աղքատ դասակարգին, առհասարակ յաճախ փողոցէն աւ ցած միայարկ տուներու մէջ ապրելուն, սակայն իր այս տեսութիւնը շատ ճիշդ ըլլալ չի թուիր, վասնզի քաղաքը խոնաւ է արդէն իբրեւ քանի որ հարթ գետնի վրայ կառուցուած և ամէն կողմէն՝ մօտէն և հեռուէն լեռնաշղթաներով շրջապատուած՝ ջուրերու հոսավայր չունի և այս պատճառով իր շուրջը հազիւ մէկ ժամ հեռու կը գտնուին շատ մը ճահիճներ և լճակներ։

Այս լայնատարած շամբը, կամ եղեգնուտ ճահճավայրը, մանաւանդ ամառը, վտառողջ կը դարձնէ զայն միշտ պահելով միգամածի մը մէջ, և ամառն նոյնքան խոնաւ՝ որքան ձմեռը։ Հակազդելու համար այս չարիքին հարկ էր չորցնել այդ ճահիճները, սակայն հանրային առողջութեան նուազ հոգածու Նախորդ օտարունդները, թող չեն տուած որ ձեռներէց կառավարիչները ընէին այդ բանը վասնզի Կեսարիոյ այդ ճահիճները, ուր մեծաքանակ կը բուսնին կնիւնը (որուն տեղացիք պէտրի կ'ըսեն՝ այսինքն կակուղ), մէջը լեցուն եղէգը, քաղաքին վառելանիւթ կը հայթայթէին։ Այնպէս որ քաղաքին մէջ ամէն տարի համաճարակներ կը ծագէին։

Առանց այդ ճահիճներուն գոյութեան ալ Կեսարիա իբր քաղաք մը, որ կառուցուած է հարթ դաշտի մը վրայ, ուր ամէն տեսակ աղտոտ ջուրեր կայուն կը մնան և կը նեխին, չի կրնար առողջապահիկ վայր մը նկատուիլ, մանաւանդ երբ քաղաքը կոյուղի չունի և տուները՝ իրենց աղտոտութիւնները իրենց մէջ պահելու դատապարտուած են։

Հետեւաբար զարմանալի պէտք չէ թուի եթէ խոնաւութեան հետեւանք՝ յօդացաւը — զոր տեղացիք առ հասարակ մարձումով (massage) կը դարմանեն — այնքան շատ տարածուած է։ Նոյնպէս մանուկներու մէջ առ հասարակ չափազանց տարածուած են ամէն տեսակ կոկորդի ցաւերը, մանաւորապէս գեղձերու (amygdale) ուռեցքը, որոնք նոյնպէս հաւանօրէն խոնաւութեան արգասիքն են։ Սակայն V. Cuinet (Ա. 309) կ՚ըսէ թէ ասով հանդերձ խիստ առաջացած տարիքով ծերունիներ հազուագիւտ չեն Կեսարիոյ մէջ, ուր կը հաշուուէին երբեմն բազմաթիւ հարիւրամեաներ, մանաւանդ Հայ բնակչութեան մէջ, ինչպէս կը շեշտէ յատկապէս։

Քաղաքացիք իրենց բնավայրին ապառողջութիւնը չեն կրցած դարմանել իրենց բնակավայրերու կառուցման եղանակով։ Ինչո՞ւ արդեօք Կեսարացիք պարծանքով կ՚ըսեն թէ «Կեսարիա շինուած է հաւցուով»:

Ի՞նչ հաշուով սակայն. ո՛չ ոք գիտէ։

«Կարծես աշխարհի ամենամեծ քաղաքն ըլլար ուր բնակչութեան սահմանուած գետինը նեղ ըլլար, ուր կանգուն մը հողը գնուէր ոսկի մը լիրայի՝ Կեսարիոյ տուներ խռնուած են քով քովի. փողոցներ, այո՛, կան փողոցներ, ամէնէն բանուկ որոնց լայնութիւնը հազիւ կը հասնի 4 կանգունի՝ բացառութիւնով հանդերձ ու այս կուտակումը, խռնումն ի՛նչ բանի վերագրենք Կեսարիոյ նախնեաց քով, ուրիշ բանի չենք կրնար ընծայել այս խտացումը բայց եթէ՝ որպէսզի մշակելի հողեր գրաւուած չըլլան, որպէսզի դաշտն ընդարձակ ծաւալի աչքի տեսութեան սահմանէն անդի՛ն» (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 1116)։

Սակայն բուսականութենէ զուրկ իր հողը ոչինչ կ՚արժէ, հետեւաբար Կեսարացւոց այս բնազդային խնայասիրութիւնը, իրենց սիրական բառով՝ հաշիւը, կ՚երեւայ թէ քաղաքին շինութեան մէջ ալ ի գործ դրած են, աննպատակ, և քաղաքին ապառողջ միջավայրը աւելի շեշտած. այնպէս որ W. G. Blackie (The Imperial Gazeteer A. General Dict. of Geography, etc. հտ. Բ. էջ 40) ինքզինքին իրաւունք տուած է գրելու քաղաքին նկարագրութեան մէջ թէ «փողոցները նեղ են, եւ այնքան աղտոտ որ կրնայ ըսուիլ թէ ամբողջ քաղաքը ժանտախտ կը բուրէ»: Ռ. Որբերեան որ Կեսարիա այցելած է, խօսելով քաղաքին փողոցներուն վրայ կ՚ըսէ թէ «փողոցները, ոլորուն ու կորագիծ» են։ «Ուղիներ կը համրես որոնք վայրկեան առաջ իրարմէ կը փախչին, քնացող տուներու ցանցը հիւսելով» (ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ, 1903, էջ 968)։

Դալով տուներուն Կեսարիոյ ամենամեծ մասին մէջ անոնք կը պահպանեն իրենց դարեր առաջուան ձեւը, երբ արտաքին ապահովութեան համար, քարէ չորս պատերու մէջ կը շինուէին, փողոցէն լուսամուտ չունենալով, այլ բոլոր օդն ու լոյսը ներքին բակէն ստանալով։

«Բակ մը, որուն հող պարտէզ անունը կու տան, յետոյ երկու բաժանում՝ երկու խարխուլ սանդուխներով, եւ սենեակներ՝ բոլոր կեսարական տուներու սենեակներուն նման, որոնք լոյսը բակէն կամ ձեղունէն կ՚առնեն եւ փողոցին վրայ բացուող պատուհաններ չունին երբեք» (Վ. Թէքէեան, Կեսարիա, երթուղարձի եւ բնակութեան օրագիր մը, 1913 Սեպտ.—1914 Յունուար, ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, թ. 821)։ Անոնք «բանտերու տեսք ունին առ հասարակ, մանաւանդ հին շէնքերը, չորս պատերով, եւ իրարմէ անբաժան սուֆա-թավխանա կրկնակ «խօվուշ»ներով որոնց «նամէհրամ» պատուհանները ծակեր են սոսկ՝ առաստաղներէ բացուած կամ անոնց դրացի բարձունքներէ, հեռու փողոցէ, ժխորէ,



դիտելէ: Արեւի լոյս եւ լուսնի շող հազիւ հազ կը մտնեն անոնցմէ ներս, բանտարկեալ բնակիչներուն բախտակից ըլլալու երկիւղով» (Աշոտ քհ. Երկաթ, Ամէնուն Տարեցոյց, 1923, էջ 362)։ Այդ տուները առ հասարակ միայարկ, հողէ տանիքներով պատսպարուած են և «լաւ կառուցուած, թէև շատերը հեղքուած ու աւերուած՝ 1835ին պատահած երկրաշարժի մը հետեւանքով» (W. G. Blackie, The Imperial Gazeteer. A. General Dict. of Geography etc. հտ. Բ. էջ 40)։

Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան որ ամէն պարագայի մէջ այս երկրաշարժէն առաջ գրի առած է իր գործը, ինքն ալ կը հաստատէ թէ ԺԹ. դարուն սկիզբը «Որմունք տանց ի կոփածոյ քարանց, ունին ի վերայ տանիս» և կու տայ սա հետաքրքրական տեղեկութիւնը թէ «բազմաց սովորութիւն է զորմունս ի ներքուստ զարդարել յախճապակեայ այսինքն ճուռճուրի անօթովք եւ ի վերայ դրանց որք են կամարաձեւ՝ գրել զանուանս իւրեանց» (Աշխարհագր. Ա. մաս, Ա. հտ. էջ 312-313)։ Այս սովորութիւնը հաւանօրէն վերջին ժամանակները ջնջուած է վասնզի նորերու կողմէ չէ յիշուած։

Տուներու շինութեան այս կերպը, քարաշէն, առանց ծեփի(1) ու հողէ տանիքով, այն օգուտը միայն ունեցած է որ Կեսարիոյ թաղերը մեծ հրդեհներէ զերծ մնացած են, մինչ փայտաշէն շուկան ամբողջովին այրած է մէկ գիշերուան մէջ 1872ին (Թ. Քէչեան, Բիւզանդիոն, թ. 5582)։

Տնաշինութեան այս կերպին մէջ դեր կատարած ըլլալ կը թուի երկրին հրաբխային հանգամանքին բերմամբ երկրաշարժներու յաճախութիւնը, որ վտանգաւոր կը դարձնէր բազմայարկ շէնքերու կառուցումը։

Ասով հանդերձ, վերջին տարիները, շինուիլ սկսած էին արդիական տուներ, որոնք անշուշտ պիտի դարմանէին, բնական անպատեհութիւնները, որոնցմէ մէկն էր նաև քաղաքին բխող աղբիւրներէ զուրկ ըլլալը, թէև ունէր ջրհորներ որոնց ջուրը լեղի էր սակայն։

Քաղաքը իր խմելու ջուրը կ՚ստանայ Արգէոսէն, գետնափոր ճամբաներով։ Այս ջուրը ո՛չ համով է և ո՛չ ալ առողջարար։ Քաղաքին մէջ կան 121ի չափ մշտահոս աղբիւրներ(2), որոնք կը գոհացնեն քաղաքին խմելու ջուրին պէտքը, առանց սպառելու երկիւղը տալու։ Այս աղբիւրներու ջուրերը կու գան երեք ակերէ, որոնք են. 1. Գէօյիւք Ակուն, 2. Քումլուք, 3. Մաքպուլ Սույու։ Ասոնցմէ լաւագոյնը կը նկատուի վերջինը (Քէմալէտտին, էջ 42)։

Տեղացիք՝ քաղաքին աշխարհագրական դիրքի այս անյարմարութիւնները մասամբ դարմանած են ամառը գրեթէ քաղաքը պարպելով և շրջակայ այգիները և գիւղերը ապաստանելով։ Մանաւանդ ամառը, երբ «ճահճային նեխած օդ մը կ՚ապականէ մթնոլորտը Կեսարիային, ... տեղացիները ... կարօտը կը քաշեն իրենց դիմաց կանգնող բեւեկունն Արգէոսի այեւոր սարին պաղուկ ծիւներուն, սապախարշ ոչխարներու պէս եւ ամէն տարի

(1) Barth դիտել կու տայ թէ տուներուն վերի մասերը առանց ծեփի են երկրաշարժերու վախով (Encyclopédie de l'Islam, էջ 703)։

(2) Տիգրան Ֆրէնկեան անոնց թիւը նշանակած է 80, սակայն Քէմալէտտին (41) հիմնուելով Նազիֆ անուն անձի մը գրածին (Էրճիաս կազէթասը, թ. 73) վրայ 121 կը նշանակէ։

անոր ստորոտը կանչող հազարաւոր այգիներ կը թափին մաքուր օդ ծծելու համար» (*Կ. Կ. Տէվէլեան*, Սուրհանդակ, *թ.* 591)։

*Տենդագին տաքը և անտանելի խոնաւութիւնը հարկեցուցիչ կը դարձնեն այս տեղափոխութիւնը որ կը կատարէ քաղաքին բնակիչներուն մեծագոյն մասը, շրջակայ այգիները և գիւղերը երթալու համար, ամառնային եղանակին։*

*Այդ ժամանակամիջոցին քաղաքին բոլոր թաղերը բացարձակ կը դատարկանան։ Ոմանք իրենց տուները և գոյքերը կը վստահին պահապաններու հսկողութեան, իսկ ուրիշներ, ամէն ինչ որ ունին կը փոխադրեն գիւղ, որով բան մը չի մնար գողցուելիք։*

*Պաշտօնատարները, վաճառականները և բոլոր անոնք որ քաղաքին մէջ գործ ունին, առտուն կու գան քաղաք և իրիկունը կը դառնան գիւղ։ Բոլոր ճամբաները, բոլոր կածանները առտուան և իրիկուան պահերուն ոգեւորուած են։ Մասնաւորապէս իրիկուան ամէն տեսակ գրաստներու վրայ հեծած հազարաւոր հեծեալներ, կը դառնան պզտիկ խումբերով դէպ ի տուն, ուր իրենց ընտանիքները կ'սպասեն երեկոյեան ճաշի։*

*Անոնք որ գիւղը տուն չունին և չեն ալ կրնար հրաւիրուիլ ոեւէ աւելի հարուստ ազգականէ կամ դրացիէ մը, կը վարձեն սենեակ մը վանքի մը մէջ, և ասով կը նպաստեն հասոյթ մը ապահովելու այդ հաստատութիւններուն։ Վերջապէս, ի չգոյէ լաւագոյնին, ոմանք կը գոհանան դրացի գիւղի մը մէջ վարձուած սենեակով մը։*

*Կեսարական բարքերու մէջ հետեւաբար առօրեայ կեանքի մասը կը կազմէ այս սովորութիւնը որ ժողովուրդին լեզուին մէջ* «այգի ելլել» *բացատրութեամբ կ'արտայայտուի և որ* «կը նշանակէ 4–5 ամիս թողուլ քաղաքն ու իր փոշին, իր բուրումներն ու նեղ փողոցները, իր պատերուն ետին, բակերու վրայ նայող պատուհաններով տուները, եւ գալ ազատօրէն տարածուիլ այստեղ, գիշերը բացօթեայ պառկիլ տանիքին վրայ եւ ցերեկը բոպիկ պտտիլ որթատունկերու մէջտեղ...» (*Վ. Թէքէեան*, Ժողովուրդի Ձայն, *թ.* 810)։

*Առ հասարակ բարեկեցիկ և միջակ դասուն և նոյնիսկ անկէ վար դասակարգին պատկանող ընտանիքներ ունին իրենց սեփական ամարանոցները։*

«Երբ *ամարանոց* կ'ըսենք ընթերցողը պէտք է որ երեւակայէ աւելի կամ նուազ հանգստաւէտ պայմաններու մէջ շինուած միշտ քարաշէն տուն մը, եւ աւելի կամ նուազ տարածութեամբ այգեստան մը: Աղքատներու ամարանոցները սովորաբար միայարկ են, կը բաղկանան միակ սենեակէ մը եւ յարակից պատշգամէ մը՝ երկու կողմէն բաց, նաեւ փոքր քարերով յատակուած բակէ մը: Այս կարգի ամարանոցները իրենց հարեւաններէն կը զատուին քարակոյտէ ձեւացած թումբով: Իսկ հարուստներու ամարանոցները, ընդհանրապէս երկյարկանի են, մէկ կամ քանի մը սենեակներ, խոհանոց մը եւ պատշգամ մը կը կազմեն վարի յարկը, իսկ վերի յարկը՝ *Մուհաճճէր* կոչուած զոց, կամ քանի մը կողմէն բաց սենեակներ: Հարուստներու ամարանոցները հաստ պատերով եզերուած են» (*Ձեռագիր Եղիազարեանի*)։

*Այս ամարանոցները որոնք շրջապատուած են այգիներով կամ պտղատուններով, հետաքրքրականօրէն հիմնուած են գագաթներուն կամ կողերուն վրայ այն բլուրներուն որոնք Արգէոս լերան վերջին հանդիպագօտիները* (contre forts) *կը կազմեն։*

«Կեսարիոյ հարաւային արեւմտեան ծայրէն կ'սկսին Արգեոս լերան առաջէն սահմանագծը կազմող բլուրները: Ասոնց մէջէն քաղաքին ամենամօտն են *Գէշլթէփէլէր* անունով ծանօթ բլուրները: Ասոնցմէ յետոյ կուգան *Էսկիշէհիրի* բարձունքները եւ *Արապլար Կէտիյի*։ Հին Կեսարիան այս բլուրներուն վրայ շինուած էր ըստ աւանդութեան: Հիմա անոնց վրայ ցրուած են քրիստոնեայ եւ ընդհանրապէս Հայ բնակչութեան ամարանոցները...:

*Արապլար Կէտիկէն* անդին՝ կ'սկսի Արգեոսի աստիճանաբար բարձրացող սարալանջը, որուն վրայ փռուած են Թուրք ամարանոցներու՝ շինութիւններով միշտ աղքատ, բայց կանաչութիւնով աւելի հարուստ շարքը, ինչպէս նաեւ քանի մը թուրք գիւղի խրտուիլակներ, հաստատուած ապառաժոտ բարձունքներու կողերուն:

Կեսարիոյ հարաւէն, գրեթէ երկու փարսախ հեռուէն, ու դաշտագետնէն սկսելով ծայր կու տայ ուրիշ ամարանոցներու շարք մըն ալ, *Գարա Տէրէ* եւ *Էշէք Մէյտանը* կը կոչուի(1): Ասոնք հետզհետէ կը բարձրանան, կը մագլցին դէպ ի Արգեոսի հիւսիսային Արեւելեան կողմերն ի վեր եւ կ'ընդխառնուին *Հիսարճըք* կոչուած թուրք գիւղի մը այգեստաններուն:

Այս դալարազարդ ու ընդարձակ լեռնադաշտին վերեւ տիտանեան անտառապահի մը դիրքով կռկզուած է Իլիճօս լեռը, տեղացի հացագործներու *քիւլահին* ձեւն ունի ան: Անոր ճիշդ քովիկը՝ դէպ ի արեւմուտք զոյգ մազերով զանկի ձեւով կլոր ցցունք մը կազմած է խնաբլուր մը, որ անուն չունի: Ասդին, դէպ ի հիւսիսային արեւմուտք, այսինքն քաղաքին ճիշդ արեւմուտքը, մօրը քէն ըրած անառակ որդիի մեկուսացումով կանգնած է *Ըըլանլը*(2) բարձրաւանդակը՝ պատկառելի հեռաւորութիւն մը պահելով Արգեոսէն, իր քղանցքը կը դալարազարդեն *Աղեազըի* Թուրք ամարանոցները, իսկ իր ոտքերը կը թրջէ *Անի չայ* գետակը: Անդին դէպ ի հարաւ, քաղաքին ճիշդ դիմացը արմատ դրած է պղնձագոյն բարձունք մը. հիանալի երեւոյթ մը ունի ան մանաւանդ գարնան ամիսներուն երբ իր հողին կարմիր գոյնին հետ կը խառնուի իր կողերուն վրայ մշակուած արտերուն կանանչը: Զարմանալի զարտուղութեամբ մը, ոչ իսկ ժայռի բեկոր մը խոցոտած է անոր ողորկ մակերեսը: *Գըզըլ Թէփէ* կ'ըսուի ան ու կը հսկէ *Գարա Տէրէ* եւ *Էշէք Մէյտանը* կոչուած ամարանոցներուն մէջտեղ: Անկէ գեղեցիկ ձորով մը բաժնուած է ուրիշ հրապուրիչ լեռնակ մը. մանկական գդակի ձեւով հողի ուռուցք մը ունի գագաթին: Անուն չունի ան, բայց հանրածանօթ է ան իբր ժամադրավայրը եւ ապաստանը Թուրք սրիկաներու որ իրենց առեւանգած կիները հոն կը տանին՝ խաղցնելու համար: Վերջապէս այս բարձունքին կիցը, դէպ ի արեւելք, այսինքն Կեսարիոյ հարաւ արեւելեան անկիւնը լայնախարիսխ դիրք մը բռնած են՝ թրքական եւ յունական յորջորջումով *Այ-Վասիլ* իսկ հայկական անուանումով *Բարսեղ Հայրապետի*

---

(1) *Կեսարիոյ այգիները զատ զատ մասերու բաժնուած են և իւրաքանչիւրն ունի իր տեղւոյն ու դիրքին համեմատ առանձին անուններ, զոր օրինակ* Գարատէրէ, Ասարճըգ, Չայ, Պիլլօր, Մէրտիպանըը, Կիւլլէ, Գըզըլ Քէօշք, Կէտէրեւ, Հէքիմլէր, Պէճէն, Մէրքէպ Մէյտանը, Սախա, Գարանավիրան, Հասանտաղ, Արապլար Կէտիյի, Էսքիշէհիր, Շախշախ, Էյրի Պունազ, Պէշ Թէփէլէր, Աղեազը, Կէտէֆլէր, Քէրկեահ, Պէլ Պաշը, Չուգուր, Գանլը Խուրս, Գըրանարս *և այլն* (*ՀԱ.* 1899, *էջ* 15)։

(2) *Կեսարիայէն 2ուկէս ժամ հեռու է։ Այսպէս կոչուած է շատ օձ գտնուելուն համար։ Լերան միայն մէկ կողը մշակուած է։ Ետեւի կողմը լերկ ու խոպան է և վնասակար օձերու կայան։*

խարեակները, իրարու փակած մարմնով, բայց անջատ գագաթներով: Կեսարիոյ սրբազան լեռն է անիկա:

Ահա այս բարձունքներուն վերեւը, դէպ ի հարաւային արեւմուտք, կը բարձրանան ալեփառ Արգէոսին զոյգ գագաթները՝ մշտապսակ, վիթխարի ապառաժներով խոժոռած, եւ մահահրաւէր գահաւանդներով կննան: Ան իր օժանդակ բարձունքներովը, զորս յիշեցինք, կը պարփակէ Կեսարիոյ հարաւային եւ արեւմտեան կողմերը:

Անդին, Տորոսէն անջատուած ճիւղ մը հարաւէն դէպ ի հիւսիս երկարաձգուելով, կը պարզի Այ-Դաղի կողին տակէն ու աստիճանաբար խոնարհելով, վերջապէս կ'իջնէ դաշտագետինը: Այս բլուրներու շարքն ալ կը կազմէ քաղաքին արեւելեան շրջապատին գիծը: Անոնց վրայ՝ թաւ կանանչներու մէջ հեզօրէն ընկողմանած կ'երեւի շարք մը գիւղերու, որոնց կարգին են *Թալաս*, *Տէրէվանք* եւ *Կէրմիր*՝ հայաբնակ, եւ *Զինճիտէրէ* ու *Էնտիլիւք* յունական գիւղերը, իսկ անոնց ետին՝ մէյ մէկ նկարագեղ դիրքերու մէջ զետեղուած են *Գէլէկէսի*, *Էֆքէրէ* եւ *Նիրզէ*՝ հայաբնակ ու *Տարսիախ* յունական գիւղերը:

Գալով Կեսարիոյ հիւսիսային շրջագծին, կազմուած է արեւելքէն դէպ ի արեւմուտք երկարած միաձեւ բլրաշարքով մը, լերկ, քարոտ, տեղ տեղ կրախառն. քանի մը գիւղերու կմախքներ եւ *Մունճուսուն* կոչուած գեղեցիկ գիւղը փակած կը տեսնուին:

Ահա այս վերջին բլրաշարքին ետեւէն արեւելքէն արեւմուտք ուղղութեամբ կը հոսի Ալիսը անշշուկ, բայց մահաշուք հանդարտութեամբ: Իր նշանաւոր միակամար կամուրջը(1), հազիւ տասնեւհինգ մղոն(2) հեռու է քաղաքէն՝ կառուցուած է դարեր առաջ: Սելջուկ եւ Թուրք տիրապետութեանց ընթացքին կատարուած նորոգութիւնները սրբած են անոր հին արձանագրութիւնները. հետեւաբար դիւրին չէ որոշել այսօր որ Յունակա՞ն թէ Հռովմէական յիշատակ մըն է ան(3)» (*Ձեռագիր Եղիազարեանի*):

*Այս գեղեցիկ շրջապատին և այդ օդասուն և բարձրադիր վայրերուն մէջ է որ կեսարացիք ո՛չ միայն կը կազդուրուին առողջ օդի մը մէջ, հեռու քաղաքին փոշիէն և խոնաւութենէն այլ նաև իրենց կեանքին մէջ կը մտցնեն փոփոխութիւն, պարուրելով իրենց աչքերը գալարիններու հմայքովը ու երկարաձգուող սարերու շարքէն անդին տարածուող ընդարձակ հորիզոններու տեսիլքով, որմէ զուրկ է քաղաքը իր անհորիզոն ու ցածր թաղուած դիրքովը:*

(1) *Այս պատճառով կոչուած՝* Թէք Կէօզ: *Այդ միակ կամարը* 27 *մեթր լայնք և* 18 *մեթր բարձրութիւն ունի* (Քէմալէտտին, *էջ* 93):

(2) *Քէմալէտտին* (93) 30 *քիլոմեթր հեռու կը նշանակէ:*

(3) *Հանգուցեալ Եղիազարեան պատմական սխալ մը կ'ընէ հոս, վասնզի այս կամուրջը իր իսկ վրան կրած արձանագրութեան համաձայն կառուցուած է Սելջուկեանց շրջանին Հիճրէթի* 599*ին* (=*Քր.ի* 203) *Ռիւքնէտտին Սիւլէյման Բ. Ռումի Սուլթանին ժամանակ: Էվլիյա Չէլէպի ալ նոյնպէս սխալմամբ անոր շինութիւնը Գոճա Սինանի ճարտարապետութեամբ Սիւլէյման Գանունի Օսմ. Սուլթանին վերագրած է* (Քէմալէտտին, 93-94):



Բ.

## ԿԵՍԱՐԻԱ ԻԲՐ ՔԱՂԱՔ

*Կեսարիա իր աւելի քան 12.000 խտացած տուներով, ու ուռիներու թուխ սաղարթներով մշուշուած, գիւղի մը անշուք տեսքով կը նկարուի դաշտի մը մէջ, որ Արգէոսի հիւսիսային կողմը կը տարածուի: Քաղաքին ընդհանուր տեսքը, ոչինչ ունի հրապուրիչ: Հեռուէն ընդարձակ և անդալար գերեզմանատան մը, իսկ աւելի մօտէն աղքատ գիւղի մը երեւոյթն ունի, իսկ ներսը՝ բոլորովին անհրապոյր, ցեխով և աղտոտութեամբ, քայքայուած բազմաթիւ ճամբաներով և խեղճ ու յաճախ աւերուած խարխուլ տուներով քաղաք մըն է:*

«Բնութիւնը Կեսարիան չէ օժտած իր գեղեցկութեամբ, բաց ի քանի մը աչքի զարնող շէնքերէ՝ գեղեցիկ քաղաքի մը երեւոյթը չէ որ կը պատկերանայ. ա՛ս է



ԿԵՍԱՐԻՈՅ ՔԱՂԱՔԻՆ, ՄԷԿ ՄԱՍԸ

անոր արտաքին տեսքը, թէեւ ներքնապէս ունենայ իր ծոցը քաղաքի վայել տուներ: Փողոցներն այնքան մաքուր չեն. չես լսեր հոն ջուրի խոխոջ մը, առուակ մը, որ օձապտոյտ գալարի այս կամ այն կողմը. հոս, տուները պարտէզներ չեն շրջապատեր, ոչ ալ անտառներ՝ որ իրենց հաճելի դրացնութիւնն ընծայեն քաղաքին: Իր բոլոր տեսարանը կը կազմէ յաւիտենական Արգէոս, որ Արգոսի աչքով կը դիտէ քեզ, եւ տնկուած է գլխուդ վրայ ո՛ւր ալ ըլլաս. աւա՛ղ, ան ալ միշտ սա՛ռ. միշտ պաղ, ոչինչ ունի գեղեցիկ. զի գեղեցկութիւնը լեռներու մէջ բաժնուած ատեն Ալպեանք յափշտակած են զայն» (*Ե. Երկաթեան*, Բիւզանդիոն, *թ.* 2087):

«Երկու գլխաւոր ուղիներ կան քաղաքը մտնելու համար. մէկն է Սեբաս-

տիոյ, իսկ միւսը Էնգարէի եւ Գոնիայի միացեալ խճուղիները: Առաջինը հիւսիսային արեւելքէն, իսկ երկրորդը հիւսիսային արեւմուտքէն կ'առաջնորդեն անցորդը քաղաք: Այս երկուքէն որո՛վ ալ Կեսարիա մտնել հարկ ըլլայ, նախ պէտք է անցնիլ բռքաքնակ փողոցներէ, նեղ ու զիկզակ, զորս կ'եզերեն միայարկ ու ցածուկ հիւղակներ: Մարդ նախ պիտի փորձուէր մէյմէկ խշտիք կարծելու զանոնք, նկատելով մանաւանդ որ փողոցներուն մէջ մարդոցմէ աւելի շուներ կը վխտան, քիչ յետոյ փարախներ կարծելու պիտի մղուէր, տեսնելով որ անոնց պատերուն վրայ թրիքի հատորներ փակցուած են:

Քաղաքին կեդրոնական մասին մէջ միայն կարելի է հանդիպիլ շէնքերու որոնց վրայ նայուածքը կրնայ քիչ շատ հաճոյքով կանգ առնել: Այդ մասին բնակիչներն են առաւելապէս Հայերը, եւ ցանցառաբար Յոյները: Անոնք կառուցած են ո՛չ թէ միայն նոյակապ եկեղեցիներ, այլ նաեւ արդիական բազմաթիւ բնակարաններ, լուսաւոր, հանգստաւէտ ու շքեղ: Պէտք է գիտնալ թէ Կեսարիոյ տուները քարաշէն են առանց բացառութեան. արդէն քարէն առատ ու աժան շինութեան նիւթ չիկայ այդ կողմերը եւ Կեսարիա դեռ երկար դարեր փայտի կամ աղիւսի պէտքը պիտի չզգայ: Փա՛ռք իր անսպառ քարի հանքերուն: Կեսարիա շատ անշուք է նշանաւոր շէնքեր պահելու համար իր մէջ» (Եղիազարեանի Ձեռագիր)։

Քաղաքին մէջ ո՛չ նշանակելի հնութիւններ և ո՛չ ալ ճարտարապետական կամ գեղարուեստական արժէք ունեցող յիշատակարաններ բազմաթիւ են։

Հիւսիսէն եկող ճամբորդ մը կը տեսնէ գմբէթներ և երկնասլաց մինարէներ՝ կ'երեւին նաև, բերդին պատերն ու թիւրպէները (Albert Gabriel. Monuments Turcs d'Anatolie. Ա. հտ.)։

Իբր թէ Մոլթքէ և Nauman ըսած են եղեր որ Կեսարիա կեդրոնական Փոքր Ասիոյ ամէնէն գեղեցիկ և ամէնէն տպաւորիչ քաղաքն է (Encyclopédie de l'Islam 703) մինչդեռ միեւնոյն թուականներուն ուրիշ ուղեգիր մը՝ Ainsworth ոչ մէկ գեղեցկութիւն կը գտնէ հոն (Albert Gabriel. Ա. Քէմալէտտին, 22)։

Գ. Ս. Գօղոսեան (Արեւ ԺԹ. տարի թ. 4827) կը խորհրդածէ թէ «կ'երեւի թէ Մոլթքէ Կեսարիա մտած է քրիստոնեաներու թաղին կողմէ, իսկ միւսը Եօզղատի ճամբով գալով մտած է ցեխոտ և ամայի փողոցներէն, ինչպէս որ էին և թերեւս ալ են այժմ թրքական թաղերը, թէեւ ընդհանուր պատերազմէն ետք հայկական և յունական թաղերն ալ կորսնցուցած են իրենց հին շնորհքն ու շէնութիւնը»։

Մորդտման որ նոյնպէս Կապադովկիա այցելած է ուսումնասիրութեան համար, յուսախաբ եղած է ճարտարապետական նոյակապ յիշատակարաններ չգտնելով հոն, այլ միայն Սելճուկեան շրջանէն մնացած բերդը և քանի մը մզկիթներ որոնք ճարտարապետական և հնագիտական արժէք կը ներկայացնէին։

Վ. Թէքէեան՝ զինուորական Մոլթքէի և միւս հնախոյզ ուղեւորներու աչքով չդիտելով անշուշտ քաղաքը, կարծես թէ յուսախաբութեան մը կը մատնուի, երբ առաջին անգամ կը տեսնէ զայն, ինչպէս արտայայտած է իր Կեսարիա ուղեւորութեան օրագրին մէջ գրելով.

«Ա՞յս է Կեսարիան— կը խորհէի տխրօրէն՝ երբ կառքը հետզհետէ կը մօտենար իմ ծնողքիս եւ պապերուս ծննդավայրին: Լերան ստորոտը, երկար ու նեղ քաղաք մը, մշտատեւ մշուշով կամ փոշիով սքօղուած: Բոլոր շէնքերը գորշ եւ քառանկիւն կ'երեւին աչքիս, մինչեւ իսկ գմբէթները, մինչեւ իսկ մինարէները:



— Իրարու խառնուած, իրարու մէջ մտած քառանկիւններ, որոնց վրայ ոչ մէկ գիծ՝ ուր աչքը հանգչիլ կարենար: Շուրջը՝ ոչ մէկ կանանչութիւն. բոլոր լեռները ծածկուած են հրաբխային քարերով: Այս երկրին մէջ ծառ չկայ կարծես:
— Վերջապէս, ա՛յս է Կեսարիան...:»

«Հրապարակ մը, ուր բաւական թուով եւ ամէն ձեւէ կառքեր կեցած են, եւ որոնց մէջ քանի մը բայթօններ— եւ որ շրջապատուած է խաներով, կ'ընդունի մեր կառքը: Ահաւասիկ ոտքս Կեսարիոյ հողին վրայ է, աւելի ճիշդ՝ յարդին ու աղբին վրայ:» (Ժողովուրդի Ձայն, թ. 810)։

Անատոլեան քաղաքի մը բոլոր յատկանիշերով ներկայացող այս քաղաքը իր անթիւ մանուածապատ, նեղ, աղտոտ և յաճախ անել փողոցներով ճշմարիտ լաբիւրինթոս մըն է, ինչպէս ըսած են։

Անիկա իր կառուցումով և բոլոր միւս հանգամանքներով թրքական քաղաք մըն է, որ իր ամէն մասերով, հազիւ 7–8 հարիւր տարիներու անցեալ մը ունի։ Իր արդի տեղւոյն վրայ Սելճուկեանց շրջանին շինուած է և — ինչպէս յետոյ պիտի տեսնուի — անունի կապէն զատ ուրիշ ոեւէ կապ չունի Հռոմէական և Բիւզանդական նոյակապ ու բարգաւաճ Կեսարիային հետ, որ անշուշտ տարբեր կառուցում ու տարբեր նկարագիր ունեցող քաղաք մըն էր։

Հետեւաբար արդի Կեսարիան շատ հին քաղաք մը չէ, կամ չէ այնքան հին որքան իր անունը։ Իր պատմական յիշատակարաններով զբաղող թուրք հեղինակը Խալիլ Էտհէմ, ինչպէս արդէն առիթ ունեցանք յիշելու (տես էջ 504) իրաւամբ կ'ըսէ թէ հնագոյն արձանագրութիւնը որ քաղաքին մէջ գտնուած է, հիճրէթի 589 = Քր. ի 1193 թուականը կը կրէր և կը պատկանէր Նուրէտտին Սուլթան Շահի որ Կեսարիոյ մէջ կը թագաւորէր, իբր զաւակներէն մին Գըլըճ Ասլան Բ. ի (1156-1193) որ անմտութիւնը ունեցած էր իր պետութիւնը բաժնելու իր 10 կամ 12 զաւակներուն միջեւ։

Ժամանակին քաղաքը պարսպապատ եղած է։ Ասոր ապացոյց են պարիսպէն մնացած հետքերը և անունները շատ մը դուռներու, որոնց միայն յիշատակութիւնը կը մնայ այսօր իբր կոչումը թաղերու, ուր ապահովաբար կը գտնուէին այդ դուռները։

Նոր ժամանակներու մէջ կը յիշուէին 1. Օրվազ Գաբուսը որուն տեղը մինչեւ հիմա յայտնի է։

2. Քաղնը փազար Գաբուսը որուն առջեւ կը հաւաքուէին այն սայլերը որոնք քաղաքին պիտոյքները բեռցած կը բերէին։ Իր անունը՝ ստացած է Քաղնը բառէն որ Թուրքերէն սայլ կը նշանակէ (Տես վերը էջ 80)։ Տեղացիք ըստ Վ. Թէքէեանի այս դուռը Գանլը-Գաբու (արիւնոտ դուռ) կը կոչէին աղաւաղումով (Ժողով. Ձայն. թ. 833)։

3. Աթ-փազար Գաբուսը

4. Մէյտան Գաբուսը՝ միջնաբերդին արեւմտեան կողմը, անկամար բացատ մըն էր։

5. Պօյաճը Գաբուսը

6. Քիչի Գաբու, — տեղացիք կ'անուանեն Քըչա-Գաբու — որ Թուրքերէն կը նշանակէ «փոքր դուռ»։ Այս վերջին դուռը կը կոչուի Թալասի և Էրճիէսի անունով (Հ. Էփրիկեան, Բնաշխարհիկ Բառարան)։

Այս վեց դուռները գոյութիւն ունէին ԺԹ. դարուն սկիզբը, թէև արդէն արժէքազրկուած վանդի ինչպէս Ինճիճեան կը հաստատէ

պարիսպը ունէր «դրունս 6 ելից եւ մտից, որք ո՛չ փակին եւ ո՛չ բանին» (Աշխարհ. Ա. մաս Ա. հտ. 312)։

Էվլիա Չէլէպի (ժէ. դար) իր Սէյահաթնամէյի մէջ կը յիշատակէ միայն հինգ դուռներ, որոնք են 1. Գօյանը Գաբու, 2. Քիչի Գաբու, 3. Աբ Փազար Գաբու, 4. Ասար Էօնիւ Գաբու 5. Օտուն Փազար Գաբու, (Քէմալէտտին, 38–39) կը կարծուի թէ վերջին երկուքը որոնք արդի անուններուն չեն համապատասխաներ, հին անուններն են, Սըվազ Գաբուի՝ որ պէտք է ըլլայ Էվլիա Չէլէպիի Ասար Էօնիւ կամ Հիսար Էօնիւ Գաբուսը կոչածը (Քէմալէտտին 39) և Մէյտան Գաբուի՝ որ պէտք է ըլլայ անոր Օտուն



ԿԵՍԱՐԻՈՅ ՊԱՐԻՍՊԻՆ ԵՒ ՄԻՋՆԱԲԵՐԴԻՆ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ

բազար Գաբուն (Նոյն 39)։ Առանցմէ զատ ժողովուրդը կը գործածէր իբր թաղերու անուն Եէնի-Գաբու, Գալէ-Գաբու, Գազլը-Գաբու և Էյպա-Գաբու անունները։

Առանցմէ Եէնի Գաբուն հաւանօրէն ԺԹ. դարուն մէջ բացուած ըլլալուն այս անունը առած պիտի ըլլայ։ Մինչեւ հիմա կը մնան, միջնաբերդին մօտերը դէպի Արեւելք բացուող այս դրան մնացորդները։

Իսկ միւս երեք թաղերուն մէջ միայն պարիսպին հետքերը (1) կը մնային, և դուռներուն տեղերը կորսուած էին։

Այս դուռներու շրջանակին մէջ գտնուող թաղամասերը կը կոչուէին

(1) Գ. Ս. Պօղոսեան (Արեւ Թ. 4828) կ'ըսէ թէ Կեսարիոյ պարիսպէն հատուկտոր մասեր միայն կ'երեւին այսօր Քիչի Գաբուի մէջ Հայոց Ս. Աստուածածին Եկեղեցիին առջև։



Իչերի Շար (Ներքին քաղաք), թէեւ պարիսպը որ քաղաքին այս մասը կը շրջապատէր կը կոչուէր Տիշ-Գալէ (արտաքին բերդ) բաղդատմամբ անշուշտ միջնաբերդին որ կը կոչուի Իչ-Գալէ և կը գտնուի Իչերի Շարի հիւսիս-արեւելքը։

Իչերի Շարին, այսինքն քաղաքին երբեմնի պարսպապատ մասին շրջագիծը դառնալու համար երկու ժամ կը բաւէր, այնքան պզտիկ էր քաղաքը ուրեմն երբեմն։ Քաղաքին հիւսիսային մասը ներկայացնող այդ շրջանակին մէջ միայն կը գտնուէին 19 թաղեր և շուկան։ Այսօր Իչերի Շար-էն դուրս կը գտնուի թաղ մը եւս որ նո-



ԿԵՍԱՐԻՈՅ ԻՉ ԳԱԼԷՆ

րագոյն մասը ըլլալ կը թուի քաղաքին, և կը կոչուի Պաճճէ Մահալլէսի որ ինչպէս անունէն յայտնի է, յետոյ շէնցած է և վերջին տուները կը ներկայացնէր Կեսարիոյ լաւագոյն և ընդարձակագոյն մասը։ Իսկ բոլորովին քաղաքէն դուրս անջատ թաղի մը մէջ կը բնակէին մաղազործ բոշաները։ Այս թաղն ալ Բոշալար մահալլէսի կը կոչուէր։

Արդի կամ Նոր Կեսարիոյ ամէնէն հետաքրքրական յիշատակարանները կը կազմեն իր պարիսպները և միջնաբերդը, որոնք հին քաղաքին հետ կապ մը չունին, թէև ոմանք անոնց շինութիւնը մինչև Յուստինիանոսի շրջանը բարձրացունեն, ինչպէս ըրած են Կեսարիոյ նոր տեղագրողը և Թուրք նոր պատմագրութեան համոզուած առաքեալներէն մին Գարա Մէհէմմէտ Աղա Ջաւէ Քէմալէտտին (տես իր գործը, 48), և վարձուած հնախոյզը Բրոֆ. Albert Gabriel (Monuments Turcs. Ա. հտ.)։

Ընդհակառակը շատեր կը պնդեն զանազան կարեւոր փաստերով թէ այս պարիսպը շինուած է Դանիշմանդեանց կամ շատ շատ Սելջուկեանց շրջանին և աւելի հաւանականօրէն մասամբ մէկ և մասամբ միւս շրջանին։

Միխայէլ Ասորի (414) ինչպէս տեսնուեցաւ (էջ 489) արդէն Դանիշմանդ Մելիք Մուհամմէտի (1135–1143) համար կ'ըսէր «շինեաց զԿեսարիոյ պարիսպն»: Հեղինակ մը պարիսպներուն շինութեան թուականը թէև յայտնի չէ կ'ըսէ, սակայն նկատելով որ Ասէտտին Կայ Քաուզի (1211-1220) անունով արձանագրութիւն մը գտնուած է պարիսպին աշտարակներէն մէկուն մէջ, կը կարծէ թէ այս պարիսպները շինուած են 1208ին, մինչ այս թուականը անոր հօրը Ղայասէտտին Կայ Խուսրով Ա.ի իշխանութեան (1205–1211) ժամանակամիջոցին կը պատշաճի։



ԿԵՍԱՐԻՈՅ ԻՉ ԳԱԼԷՆ

Ուրիշներ ալ կ'ըսեն թէ Սելջուկ Ռումի նշանաւոր Սուլթանը՝ Ալայէտտին Կայ Խուպատ Ա. (1220–1230) մեծ կարեւորութիւն տուած է Կեսարիոյ պարիսպներուն նորոգութեան, որպէսզի Թաթարներու յարձակման դէմ պաշտպանութեան միջոց ծառայէ (Քէմալէտտին, 51)։ Նախատեսութիւն որմէ օգուտ քաղեցին — թէև ի զուր — հազիւ երկու տասնեակ տարիներ յետոյ, Ղայասէտտին Կայ Խուսրով Բ.ի (1237–1247) միքանի զօրավարները, զայն ամրացնելով շուտով (տես վերը, էջ 515)։

Պարզ տրամաբանութեամբ մը կրնայ հետեւցուիլ, ուրեմն, թէ Դանիշմանդ Մելիք Մուհամմէտ հիմնած, Ղայասէտտին Կայ Խուսրով Ա., Ասէտտին Կայ Քաուզ, Ալայէտտին Կայ Խուպատ Ա. և Ղայասէտտին Կայ Խուսրով Բ. զայն ճոխացուցած և զարգացուցած են։

Կեսարիոյ պարիսպներուն Թուրք–իսլամական ճարտարապետական կերտուածքը կը հաստատեն Tozer և այլ ուղեգիրներ։ Այսօր Տըշ Գալէի պարիսպներուն մեծ մասը փլած և անհետացած են և նոյնիսկ պարիսպին տեղերը տուներ շինուած։

Ամէնէն քիչ վնասուած մասը Սուլթան Համամիի կողմն է։ Իսկ պարիսպին առջեւ գտնուած խրամները պարտէզներու վերածուած են։

Պարիսպը կառուցուած էր կարմրագոյն կոպածոյ քարերով և ամրացուած էր քառակուսի և եռանկիւնի փոքր աշտարակներով, որոնցմէ շատերն ալ նոյնպէս այսօր փլած են և մնացածներն ալ հետզհետէ քայքայուելու վրայ են իրենց լքուած վիճակին բերմամբ։

Այս աշտարակները՝ որոնք պուրճ կը կոչուին, Եէնի Գաբուի, Սըվազ Բաբուի, Քիչի Գաբուի, Գօյանը Գաբուի և Մէյտան Գաբուի անուններով կը յիշուին։



Իսկ պարիսպին արեւելեան անկիւնը գտնուածը կը կոչուի Եօղուն Պուրճ կամ Պիրինճի Փասպան Տայրէսի և արեւմտեան անկիւնը գտնուածն ալ Իքինճի Փասպան Տայրէսի:

Եօղուն կամ Եաղան (=հաստ, զօրաւոր, մեծ) Պուրճը որ մինչև հիմա կը մնայ անաղարտ, վաւերականօրէն Սելջուկեան շինուածք մըն է, ինչպէս կը հաստատուի աշտարակին վրայ գտնուող խոշոր սիւլիւս գիրերով մարմարեայ արձանագրութենէն որ վնասուած ըլլալով շատ դժուար կը կարդացուի, միայն երրորդ տողին վրայ որոշ կ'երեւայ անունը «Կայ Քաուզ Պինի Կայ Խուսրով Պինի Գըլըճ Ասլան»ի, միայն թէ թուական չունի, սակայն այս վեհապետին իշխանութեան շրջանին (1211–1220) շինուած է ապահովաբար։

Ինչպէս կարգ մը ուղեգիրներու գրութիւններէն կը հասկցուի տակաւին ԺԸ. դարուն սկիզբը այս պարիսպները անաղարտ վիճակ մը ունէին (P. Lucas. Deuxième voyage. Amsterdam. 1714, Paris 1712)։ ԺԹ. դարուն սկիզբը այդ «պարիսպները շատ գէշ վիճակ մը» ունէին (Brown. Nouveau voyage)։

1813ին Kinneir կը գրէր թէ «քաղաքին պարիսպներուն կարեւոր մէկ մասը ցարդ մնացած են»։ Ասիկա կը նշանակէ թէ ԺԹ. դարուն սկիզբէն՝ անխնամ թողուած են և քայքայուած։

Գալով Իչ Գալէին (միջնաբերդ) անիկա անկանոն քառանկիւնի ձեւով՝ հիւսիսէն հարաւ 80 և արեւելքէն արեւմուտք 200 մէթր երկարութեամբ բերդ մըն է աւելի քան 100 ոտք բարձրութեամբ և 3 մէթր լայնութեամբ թանձր պատերով որոնք սև քարէ շինուած են և լայն խրամներով շրջապատուած, որ բոլոր շրջակայքին տիրապետող 19 բարձրադիր աշտարակներ (զուլէ) ունի։ Այս զուլէները եռանկիւնի և քառանկիւնի և քիչ անգամ բազմանկիւնի ձեւով են, և ընդհանրապէս ընդունուած ձեւի մը համաձայն քիչ մը աւելի բարձր են պարիսպէն։

Իչ Գալէն ունի երկու դուռ, մէկը դէպի հիւսիս–արեւելք միւսը դէպի հարաւ — արեւմուտք բացուող։ Այս դուռներուն ճարտարապետութիւնը շատ պարզ է։ Հարաւային դրան երկու կողմերը Սելջուկեան արուեստով երկու առիւծի արձաններ կան։ Բերդին շուրջը ժամանակին ամբողջ խրամով շրջապատուած էր։ Հիմա մէկ մասը՝ փողոցի վերածուած է և միւսը՝ արգաւանդ բանջարանոցներու։ Միայն հարաւային դրան քով մաս մը՝ դեռ խրամ կը մնայ։ ԺԹ. դարուն սկիզբը տակաւին այս բերդը կը պահէր կ'երեւայ թէ իբր ամրոց իր նշանակութիւնը, վասնզի զայն նկարագրած ատեն Հ. Ինճիճեան վրդ. կ'ըսէ թէ «ունի դրունս երկուս, եւ առաջի դրան կամուրջ փայտակերտ, զոր կարեն բառնալ 'ի լինել հարկին եւ զջուր անցուցանել ի Թալասէ» (Աշխարհագր. Ա. մաս, Ա. հտ. էջ 312):

Բուն պարիսպին շուրջը երկրորդ կարգի պզտիկ պարիսպներով շրջապատուած էր։ Այս միջնաբերդին մէջ որջացած կ'ապրէին երբեմն քանի մը հարիւր(1) Թուրք ընտանիքներ, որոնք միշտ նշանաւոր ե-

(1) Բրոֆ. Ալպէր Կապրիէլի համաձայն այդ տուներուն թիւը 600 էր։ Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, յիշատակելէ է որ միայն 15–20 տուն Թուրքեր կը բնակէին կ'ըսէ ԺԹ. դարուն սկիզբը. «յորս է եւ տիզտարն այսինքն բերդակալ»:

ղած են իրենց արիւնկզակ բնազդներով։

Ընդհանուր պատերազմի ընթացքին կառավարութիւնը փլցուցած է այդ տուները (Քէմալէտտին, 52) և այսօր բերդին մէջ շինուածանիւթերու և փլատակներու դէզեր միայն կը մնան։ Միայն իբր շինութիւն կանգուն կը մնայ հիւսիս-արեւմտեան կողմը մզկիթ մը, 10 մէթր քառակուսի ծաւալով սրահի մը և կամարակապերու վրայ յենած գըմբէթով մը։ Ըստ Քէմալէտտինի (էջ 53) այս մզկիթին տեղը ժամանակով Գարաման օղլուներէն շինուած Մէսճիտ մը գոյութիւն ունէր, որ երբ Ֆաթիհ, Կեսարիան գրաւեց, քանդել տուաւ և անոր տեղը 1470ին այս մզկիթը շինել տուաւ (Բնաշխարհիկ Բառարան)։ Մզկիթին դէմ շինուած է նաև Նրբարուեստ աղբիւր մը։

Իչ-Գալէի շինութիւնն ալ իսլամական տիրապետութեան շրջանին պէտք է կատարուած ըլլայ (G. de Jesphanion, Mélanges d'Archéologie Anatolienne, էջ 103) և շատ մը նորոգութիւններ կրած՝ առանց հիմնական փոփոխութեան։

Խալիլ Էտհէմ կը յիշէ արձանագրութիւն մը Ալայէտտին Քայ Խոպաթի (1220–1236) անունով Քր.ի 1224 (Հիճրէթ 621) թուականով, սակայն այս արձանագրութիւնը իր սկզբնական տեղը գտնուած չըլլալով, ասոր վաւերականութիւնը կասկածի տակ կը ձգեն ոմանք (Քէմալէտտին, 53)։ Մինչ ուրիշներ, ինչպէս Zimmerer և Գրոսկենտ (ՀԱ. 1900, էջ 115) կը պնդեն թէ միջնաբերդը շինուած է այդ թուականին։ Ճամբորդ մը որ երբեմն այցելած է այս ամուր բերդին աւերակները ակնաբախ նմանութիւն մը գտած է անոր և նոյնպէս Սելճուկեանց վերագրուած Հալէպի բերդին միջև։ Մասնաւորապէս մուտքին իշխող աշտարակին երկու կողմերը զետեղուած երկու առիւծները կը թուին հաստատել այս տպաւորութիւնը։ Ինչպէս յայտնի է Իկոնիոյ Սելճուկեան Սուլթաններու դրամներուն մէկ երեսին վրայ արեւի և առիւծի պատկեր մը գծուած էր։

Հարաւ-արեւմտեան դրան վրայ ուրիշ պակասաւոր մէկ արձանագրութենէն ալ որոշ եզրակացութիւն մը ձեռք բերել կարելի չէ, վասնզի անընթեռնելի դարձած է մասամբ։ Կարդացուած մասերուն թարգմանութիւնն է.

«Ժամանակին առաջնորդութեամբ «ուղեկորոյս» Թուրքեր Կեսարիան գրաւեցին եւ բնակիչները գերի առին... Մեծ Էմիր Շէյխ Տավուս եկաւ ... (մարդոց հիւանդին կը ներէ եւ վէները կը հանդարտեցնէ» (Քուրանի խօսք): Այն ատեն այսօր զգնուածը նորոգեց ... Աստուած իր իշխանութիւնը տեւական եւ երկիրը երջանիկ ընէ:

Ջուրի մէջ այրող կրակ նետողներուն հրամանատարը Շէյխ Չէլէպիին տղան Սէվին Տէմիրն էր» (A. Gabriel, Kayseri-Nigde):

«Էդդալուն» (ուղեկորոյս) բառը Կեսարիան գրաւող և Գարաման-օղլուներու կողմէ կրկին վանուած Զուլգադրեանց մէկ բացատրութիւնն էր։ Այս արձանագրութիւնը ուրեմն Գարաման-օղլուներու ատեն դրուած է, հաւանօրէն բերդին շինութեան կամ մէկ նորոգութեան առթիւ։

Այս միջնաբերդը որոշ է թէ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ.ի ատեն իրեն հպատակող Փիր Ահմէտ Գարաման օղլուի ձեռամբ ալ նորոգուած է և այս առթիւ զետեղուած են պարսկերէն արձանագրութիւններ որոնք ցարդ կը մնան անաղարտ։



Այսպէս հարաւ-արեւմտեան դրան վրայ կը կարդացուի. «Ժամանակին Սուլթան Ռումը աչք մը նետեց: Կեսարիոյ բերդը նորոգուեցաւ: Այս վեհապետին անունը Մէհէմմէտ է: Պադշահ Սաադէթ (երջանկութեան) տունը ըլլայ: Անոր ծառան Փիր Ահմէտին(1) ձեռքով շինութիւնը լրացաւ: Երէ թուականը ինծի հարցնես 870 Հիճրէթի է» (= Քր. 1465)։

Իսկ ուրիշ տեղ մը.

«... Մուրադ Խանի որդի Մեհէմմէտ այս բերդը շինեց

«... Ճարտարապետ Եահեա»:

ինչպէս կը տեսնուի կատարուածը պարզ նորոգութիւն մըն է
և ոչ վերաշինութիւն։ Ասոր փաստը այն է որ 1419ին (Հիճրէթ 822ին)
երբ Եգիպտոսի Ապու Նասր Շէյխ էլ Մուայէտ Սուլթանին (1412–
1421) զօրքերը իր որդւոյն Իպրահիմի հրամանատարութեամբ կը մըտ-
նեն Անատոլու՝ Տաւրոսէն անցնելով կու գան Կեսարիա և քաղաքը
գրաւելէն մէկ օր յետոյ կ'առնեն նաև միջնաբերդը, որ ըսել է արդէն
այն ատեն գոյութիւն ունէր, հետեւաբար չէր կրնար 1465ին նոր
շինուած ըլլալ։

Չեմ գիտեր թէ ո՞ր աստիճան ճիշդ է, սակայն Zimmerer և Գրոսկինդ (ՀԱ. 1900 էջ 115) կը հաւաստեն թէ Թուրքերը 1577ին ալ նորոգած են այս միջնաբերդը։

Այս աւերուած պարիսպներէն և միջնաբերդէն զատ, որ այս Թրքական քաղաքին ամրութեան վահանները կը կազմէին երբեմն, արդի
Թրքական Կեսարիան, կը պարծի միայն իր իսլամական մի քանի
կան քաղաքին ամրութեան վահանները կը կազմէին երբեմն, արդի
յիշատակարաններով, այսինքն մզկիթներով(2), թիւրպէներով, մէտ-
րէսէներով և այլն։

Ասոնց ամէնէն գլխաւորը և ամենահոյակապն է Ղուվանդ ճամին,
որ կը գտնուի Իչ Գալէի մօտը, անոր արեւելեան կողմը։
Իր փառաշուք գմբէթը, նաև իր անունը կարծել տուած է ոմանց
թէ անիկա Ս. Ղեւոնդիոսի անունով շինուած յունական եկեղեցի
մըն էր որ յետոյ իսլամները իրենց սեփականած են։
Այս կարծիքը կը հաստատեն չէնքին ձեւը, խաչքարերը և այլ
քրիստոնէական հետքերը, որոնք դեռ բոլորովին եղծուած չեն։
Իսլամները կը հաստատեն թէ այս մզկիթը շինած է Սուլթան
Ալայէտտինի տիկինը՝ Խովանդ կամ Խուանդ Խաթուն 1236ին կամ 1232ին
և անկէ առած է իր կոչումը (Բնաշխարհիկ Բառարան, Ա. Կապրիէլ, Քէ-
մալէտտին և այլք)։

Քէմալէտտին նկատելով որ Ալայէտտինի կինը և Ղայասէտտին
Քայ Խոսրով Բ.ի մայրը կը կոչուէր Մահբերի Խաթուն, կը քաշքշէ
իրողութիւնը ըսելով Խոնաք բառը տիտղոս մըն էր տրուած Մահբերի
Խաթունին՝ առնելով Ալայէտտինի անունին կից Խուվանդ անունէն։
Սակայն ասոնք անօգուտ միջոցներ են ճշմարտութիւնը աքօղելու
համար։

Այս մզկիթը 3880 քառ. կանգուն տարածութեամբ և 48 սիւներով հոյակապ շէնք մըն է։ Մահբերի Խաթունի մարմարեայ դամբարան ...

(1) Գարաման-օղլու մըն է։ Իր մասին տես վերը, էջ 575։

(2) Կեսարիոյ մէջ 125 մզկիթներ կան ըստ Eugène Pittardի (Le Nouveau Visage de la Turquie.)։

րանը(1) որ մզկիթին մէջն է, թանկագին հնութիւն մըն է (տես վերը 551)։

Այժմ կանգուն է նաեւ այն հին եկեղեցին՝ ուր թաղուած է Ս. Բարսեղի մարմինը(2), և կը կոչուի Ուլու Ճամի։ Զայն մզկիթի վերածած է ըստ V. Cuinetի Մէհէմմէտ Բ. Մելիք Ղազի (1142–1154), Դանիշմանդ։

Քէմալէտտին՝ որ ուրանալ կամ անտեսել կ'ուզէ քաղաքին բոլոր քրիստոնէական յիշատակարանները, նոյն Սուլթանէն շինուած ցոյց կու տայ այս մզկիթը, սակայն անմտօրէն կը խոստովանի թէ անոր խոյակները Հռոմէական և Բիւզանդական են։

ՂՈՒՎԱՆԴ ՃԱՄԻԻ ԸՆԴՀ. ՏԵՍԱՐԱՆԸ

Այս մզկիթը 1204ին (հիճ. 602ին) վերստին նորոգուած է Ղայասէտտին Կայ Խօսրով Ա.ի (1205–1211) ժամանակ, Միւզաֆերէտտին Մահմուտ Պինի Եազի Պաղանէն, ինչպէս արձանագրութիւն մը ցոյց կու տայ (Քէմալէտտին, 58)։

1716ի երկրաշարժէն յետոյ ալ նորոգուած է Մաթպուայի Ամիրէ էմինի Գայսէրլի Հաճի Խալիլ էֆ.ի կողմէ (Նոյն)։

Այս մզկիթին տարածութիւնն է 2450 քառ. կանգուն, 42 սիւներ ունի և 52 կանգուն բարձրութիւն։

Այս մզկիթին 18 կանգուն տրամագծով աղիւսակերտ աշտարակը նշանաւոր հնութիւն մըն է (Բնաշխարհիկ Բառարան) և կը կոչուի Եօղուն Մինարէ (Ինճիճեան)։

Vital Cuinet արձագանգ ըլլալով Texierի կը հաւաստէ թէ Կեսարիոյ ամէնէն հին կանգուն յիշատակարանն է այս մզկիթը, որ իբր թէ շինուած է ԺԴ. դարուն կէսերը, (մինչ ինչպէս տեսնուեցաւ ան շինուած է ԺԳ. դարուն սկիզբը) այն յատակագծին վրայ որ տուած է Մէքքէ ուխտագնացութենէ դարձին, Houen, ընկերը Հաճի Պայրամին և հիմնադիրը տէրվիշներու կարգի մը։

Այս մզկիթը շինուած է պարզ ոճով մը, և աւելի շատ նմանու-

---

(1) Texier, կը կարծէ թէ այն կառուցուած է Houenի համար։

(2) Կեսարացիք ըստ Տիար Բ. Օհանեանի, կ'ըսէին թէ Հայ Սուրբ մըն էր։ Այս մզկիթը որ Սուլթան ճամի կամ Ճամիի Քէպիր ալ կը կոչուէր ըստ Խալիլ Էտհէմի (էջ 3) եկեղեցի էր առաջ։



թիւններ ունի արաբ ոճով կառուցուած կրօնական հիմնարկութեանց քան թէ թրքականներուն։

Աղեղները պայտաձեւ են, նման Սպանիոյ մէջ Գորտովայի խալիֆաներուն կառուցած մզկիթներուն։

Խիստ նրբարուեստ դուռ մը կը բացուի դէպի Հարէմ:

Մզկիթին հիմնադիրին գերեզմանը, խիստ ճոխօրէն զարդարուած, կը տեսնուի կամարակապ սրահին առընթեր պզտիկ բակի մը մէջ։

Houenի մզկիթին քովը, կը տեսնուի հոյակապ տեսքով Մէտրէսէ մը որ կը բաղկանայ բազմաթիւ ուսանողներու սենեակներէն որոնք չուրջն են ընդարձակ բակի մը։

Պէտք է ըսել թէ այս մզկիթը և մէտրէսէն գրեթէ աւերակ են և ինչպէս Vital Cuinet կը վկայէ 1890ական թուականներուն կը ծառայէին իբր շինութեան փայտի մթերանոց (Նոյն 314)։

Բրօֆ. Ա. Կապրիէլ ճարտարապետական տեսակէտով արժէք ունեցող հնութեանց մէջ կը յիշէ նաեւ Աճղանի ճամին, որուն ի՞նչ լեզուով ըլլալը և ի՞նչ նշանակելը յայտնի չէ կ'ըսէ։ Գ. Ս. Գօղոսեան (Արեւ թ. 4828) կը հարցնէ թէ «հաւանական չէ՞ արդեօք որ «Աղուանից վանք» կամ «Աղաւնեվանք» եղած ըլլայ ան՝ նախապէս»։ Ցանգուգն ենթադրութիւն մը որ պատմական տուեալներու կը հակասէ դժբաղդաբար։

Քէօշկ Մէտրէսէի մէջ թաղուած է ըստ Ա. Կապրիէլի Արթինա իշխանին կինը իշխանուհի Սուլի փաշան։ 1381 Յուլիսին կը կարծուի որ Անթինա իշխանն ալ թաղուած է իր կնոջ քով։

Այս գերեզմանները պարունակող դամբանին դուռին քովերը Բրօֆ. Կապրիէլ գտած է արձանագրութեան մնացորդներ, որոնք շինութեան նշաններ կը կոչէ, իբր վարձկան՝ իր դերին չդրժելու համար, և չըսելու համար գիր, որովհետեւ չուզեր ըսել յունարէն կամ հայերէն արձանագրութիւն։

Գ. Ս. Գօղոսեան կը կարծէ նշմարած ըլլալ հայերէն Ռ. Ա. Ի. տառերը, և միւսները կը կարծէ թէ յունարէնի կը նմանին. (Արեւ, Նոյն)։

Բրօֆ. Ա. Կապրիէլ կը յիշէ նաեւ Քիւմպէտը որ կը գտնուի Կեսարիայէն Սեբաստիա գացող ճամբուն վրայ և հին վէզիրներու դամբարանն է։ Իսկ Մալաթիոյ ճամբուն վրայ Քարաթայ խան, շինուած 1240ին, Քարաթայի կողմէ, որ վէզիրն էր Սելճուկեան Կայ Խոպատի որդւոյ՝ Կայ Խուսրէվի։

Ոչ նուազ նշանակելի է Կեսարիոյ շուկան որ Պէզազիսթան (կտաւեղէն և կերպաս վաճառքներու շուկայ իմաստով) կամ պէզէսթէն կը կոչուի։ Ան ընդարձակ էր և շատ նպատակայարմար (W. G. Blackie, «The Imperial Gazeteer A. General Dict. of Geography» etc. բ. հտ. 40)։

Զայն շինել տուած է Մըստաֆա Փինի Ապտիւլհա 1499ին (Բնաշխարհիկ Բառարան):

«Այս շուկան որորաններէն մին եղած է Կեսարիոյ Հայոց ձեռներէցութեան եւ մարզավայրը՝ իրենց առեւտրական բնազդներուն զարգացմանը, վանքի անոր վերածնութենէն աղին՝ իր կամարներուն տակ եռեւեփող առեւտրական գործունէութեանց կեդրոնական սիրտը եղած է տեղւոյն հայութիւնը: Արդարեւ հոն է որ մարզուած են շատերը Կեսարացի այն ծանօթ վաճառականներէն որոնք աշխարհի հրապարակներու վրայ աչքառու դիրքեր գրաւած են:

Մօտաւորապէս քառակուսի գետնի մը վրայ կառուցուած քարաշէն ու կամարակապ հաստատութիւն մըն է: Փողոցներ եւ մայթեր համաչափ եւ ուղիղ, կամարներ բարձր: Չափազանցած չենք ըլլար եթէ ըսենք թէ Պոլսոյ մեծ շուկան այնքան հոյակապ, ընդարձակ եւ կանոնաւոր չէ, որքան Կեսարիոյ այս շուկան, որ տեսակ մը փառաւոր հեգնութիւն է քաղաքին ընդհանուր անշքութեան դէմ» (Եղիազարեանի Ձեռագիր):

*Ըստ Կ. Կ. Տէվէլեանի Կեսարիոյ շուկան* «հին գործող գործունեայ վաճառականին հռչակին համապատասխան շքեղութեամբ մը կը ներկայանայ. ամէն բան կանոնաւոր է հոն: Շուկան՝ ամբողջ կամարակապ՝ ձիւնէն, բուքէն, ցեխէն, անձրեւէն պատսպարուած բազմահիւղ սրահներու բաժնուած, երկրաչափական ուղղութեամբ կառուցուած է: Ամէն արհեստաւոր իրեն յատուկ սրահը յւրացուցած, վաճառականը իրեն յատուկ խաներուն մէջ, շատ կանոնաւոր առեւտուր մը կը կատարուի այդ շքեղ սրահներուն մէջ» (ՍՈՒՐՀԱՆԴԱԿ, *թ.* 591)։

*Սակայն կ'երեւայ թէ քիչ մը չափազանցուած է եթէ ոչ անոր կարեւորութիւնը գէթ շքեղութիւնը, տեղացիներու աչքին, վասնզի Վահան Թէքէեան, աւելի լայն հորիզոններ ընդգրկող իր տեսութեամբը այլապէս կը գտնէ այդ շուկան, զայն նկարագրելով հետեւեալ կերպով.*

«Շուկան՝ պոլսեբնակ Կեսարացիներու բերնին մէջ՝ Կեսարիոյ փառքն է, ուրկէ մաս եւ բաժին ունի իւրաքանչիւր քաղաքացի ո՛ւր որ ալ գտնուի, եւ առաւելապէս Հայ քաղաքացիները որոնք զայն իրենց սեփականութիւնը կը համարեն իրաւամբ, այնքան տիրող է հոն Հայերու դիրքը, թւով եւ կարեւորութեամբ:

Բայց իմ հանդիպած բոլոր գործի-մարդիկս զանգատ միայն ունին: Կ'ըսեն թէ՝ շուկան երթալով կ'աղքատանայ ու առեւտուրը կը պակսի հոն: Արդէն, երեւոյթէն դատելով կարելի չէ ըսել թէ այս շուկային մէջ ոեւէ ատեն խոշոր գործառնութիւններ կրցած են կատարուիլ: Ճոխութեան ո՛չ մէկ նշան: Պզտիկ կրպակներ, եւ ինչպէս տեղտեղ Պոլսոյ Մեծ-շուկային մէջ, գետնէն բաւական բարձր տախտակամած մը ուր խանութին տէրը ծալապատիկ նստած է եւ աշկերտը ոստումներով կ'ելլէ կ'իջնէ: Ոսկերիչներու ցուցափեղկերը վտիտ են: Գորգավաճառները նոր ու փայլուն ապրանքներ միայն ունին, որոնք կը գործուին քաղաքին մէջ եւ շրջակայ գիւղերը, տուներու մէջ հաստատուած բազմաթիւ գործասեղաններու վրայ, կանանց եւ աղջկանց կողմէ: Ապուխտին չափ, գորգն ալ կեսարական շահաբեր ճարտարարուեստ մը եղած է հիմա» (ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, *թ.* 820)։

*Քաղաքին կարեւոր հաստատութիւններն են վերոյիշեալներէն զատ կառավարչատունը* (Հիւքմէթ Խօնագը), *զինուորական շէնքերը՝ զօրանոցը, ռազմամթերանոցը, քաղաքապետարանը, մանածի գործարանները, աղբորակի գործարանը, հիւանդանոցը, եկեղեցիները եւ այլն։*

*Կեսարիա ունի նաեւ նշանաւոր խաներ։ Անոնցմէ ամէնէն գլխաւորներն են* Կէօն Խանը *որ շինել տուած է Բէրի փաշան՝* 1520*ին եւ* Վէզիր Խանը *որ շինել տուած է Իպրահիմ փաշան՝* 1729*ին* (Բնաշխ. Բառ.)։

*Հայ վաճառականները ըստ* W. G. Blackie*ի* (The Imperial Gazeteer A General Dict. of Geography etc. *հատ. Բ. էջ* 40) *իրենց ապրանքները կը ցուցադրէին* Վէզիր Խանի *մէջ։ Այս խանին մէջ կը գործէին ԺԹ. դարուն սկիզբը* «վաճառականք վաճառուց Հնդկաց եւ Սեամպօյու, սարաֆք, ոսկերիչք եւ այլն» (*Ինճիճեան*)։ *Կը յիշուի նաեւ* Կըլլամագ Խան, Բամպուք *կամ* Բամպուքճը Խան, Գաքքրճը Խան *եւ* Գանձանակ Խան:



ԳԱՆՁԱՆԱԿ ԽԱՆ

Նկ. 44

Այս վերջինը՝ մօտ ժամանակներու մէջ դարձած էր առեւտրական կարեւոր կեդրոնավայր մը։

1914ին Ընդհ. Պատերազմէն առաջ, Վահան Թէքէեան իր Կեսարիա այցելութեան առթիւ կը գրէր իր օրագրութեան մէջ թէ «Շուկայէն դուրս, մեծ վաճառատուններ կան: Անոնց ամէնէն կարեւոր կեդրոնն է «Գանձանակ Խանը».— այսպէս կոչուած՝ որովհետեւ Հայոց «Գանձանակի Ընկերութեան» արդիւնքովը կառուցուած է եւ անոր հասութաբեր մեծ կալուած է: Իբրեւ խան, Պոլսոյ խաներուն ձեւը չունի, որովհետեւ ուրիշ բան չէ բայց եթէ լայն բակի մը վրայ շուրջանակի շինուած մէկ ու մէկուկէս յարկով վաճառատուններու խումբ մը, որոնց մէջ իրաւ է թէ չեն պակսիր բաւական ընդարձակ եւ նոր վաճառատուններ: Այս շրջափակին մէջ է Օսմ. Դրամատան մասնաճիւղն ալ, որ առանձին սիրուն շէնք մըն է, նոյնպէս Գանձանակի հարկատու: Գանձանակը Կեսարիոյ ամէնէն պատկառելի անձնաւորութիւնն է, որուն անունը Հայերը հպարտութեամբ եւ Թուրքերը ակռայ կրճտելով կ'արտասանեն:

Գանձանակ Խանին մէջ գործերը ուրիշ ընթացքով մը, ուրիշ ծանրութիւնով եւ պիտի ըսէի վեհութիւնով մը տեղի կ'ունենան քան Շուկային մէջ: Շուկային եռուզեռը չկայ հոս, բայց ի փոխարէն հակերը, սնտուկները ու պարկերը տասնեակներով եւ հարիւրներով կը մտնեն ու կ'ելլեն՝ ծանրահայեաց տէրերու հսկողութեան ներքեւ: Հազիւ թէ հոս կը կարծես նշմարել Պոլսոյ, Իզմիրի եւ Եւրոպայի մէջ ապրող Կեսարացի մեծ վաճառականներուն նախատիպարը» (ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ», թ. 820):

Կեսարիա, իբր իսկապէս թրքական քաղաք մը, ունի նաեւ 7–8 բաղնիքներ, Մէլաէտտին, Ֆուաս, Տէվէնի, Գասր, Սուլթան, Ճամէր պէյ եւ այլ անուններով։

Հ. Ինճիճեան (Աշխարհ. նոյն, էջ 313) կը յիշէ իբր ամենէն երեւելին քաղաքին վեց բաղնիքներուն՝ «կամարակապ շինուածով Եէնի Համմամ»ը։ Իսլամական եւ թրքական այս յիշատակարաններու քով, իբր քրիստոնէական շինութիւններ կը կանգնին եօթը քրիստոնեայ եկեղեցիներ, ամէնքն ալ գրեթէ ոչ շատ հնութեամբ շինութիւններ։

Այդ եօթը եկեղեցիներէն երեքը՝ Ս. Աստուածածին, Ս. Սարգիս, եւ Ս. Լուսաւորիչ անուններով, կը պատկանին Հայոց, առաջին երկուքը Իչէրի Շարի մէջ եւ վերջինը՝ Պանչէ Մահալլէսի մէջ։ Երկուքը՝ կը պատկանին Յունաց։ Անոնցմէ մին կոչուած Այ-Նիգօլա (Ս. Նիկողոս), կը գտնուէր Հայոց Ս. Սարգիս եկեղեցւոյ մօտը, Իչէրի Շարի մէջ, եւ մայր եկեղեցին էր։ Թուրքերը այս եկեղեցին կը կոչէին ըստ Հ. Ինճիճեանի Բաթրիք քիլիսասի։ Իսկ միւս եկեղեցին կը կոչուէր ռամիկներէն Դուքսի Շէրիֆ քիլիսէսի (Երուսաղէմի եկեղեցի)։

Ժամանակակից շինութիւններ են Կեսարիոյ նորագոյն մասին Պէօյիւք Չէշմէ Էօնի թաղին մէջ, իրարու գրեթէ առընթերակից Հայ կաթողիկէ հասարակութեան Ս. Խաչ եկեղեցին եւ Հայ Աւետարանականներու ժողովարանը, որոնք պատմական նշանակութիւն մը չունին։

Այս բոլոր եկեղեցիները իրենց կից ունէին դպրոցներ, աւելի կամ նուազ ներկայանալի շինութիւններով։

Հայերը երբեմն կը բնակէին Իչէրի Շար (քաղաքամէջ) կոչուած յարգի տեղերը, եւ ունէին գոհացուցիչ տուներ։

Յետոյ երբ քաղաքը դէպի բացաստան ընդարձակուեցաւ եւ Պանչէ Մահալլէսին ստեղծուեցաւ, Հայերը քաղաքամէջի իրենց տուները



յարմար գիներով Յոյներուն ծախեցին եւ Թուրք թաղերու խառնուեցան, առանց լքելու իրենց երկու եկեղեցիները՝ Ս. Աստուածածին եւ Ս. Սարգիս, որոնք Քիչի Գաբու կը գտնուին։

Այս տեղափոխութեան ժամանակամիջոցին Հայերը իրենց քաղաքամէջի երկու եկեղեցիները կը նորոգեն եւ գրեթէ նոր կառուցուած վիճակի կը վերածեն։

Իսկ քաղաքէն դուրս կէս դար առաջ կը կառուցանեն Ս. Լուսաւորիչ եկեղեցին, ինչպէս նաեւ աղջկանց Արամեան վարժարանը՝ որ Պանչէ Մահալլէսիի մէջ շինուած է։

Տիգրան Ֆրէնկեան իր ձեռագիր համառօտ գրութեան մէջ կար-



ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԸ

ծիք կը յայտնէ թէ քաղաքը նախապէս աւելի ընդարձակ էր եւ Էսկի Շէհիրի բլուրին ստորոտէն կ'երկարէր դէպի հիւսիս մինչեւ արդի Հայոց Նոր թաղը՝ Պանչէ պաշը եւ դէպի Արեւելք մինչեւ Թուրք թաղը՝ Պէյլիք մահլէ, այսինքն Քառասուն Մանկունք վանքին ամբողջ դաշտը (հազը), եւ իբր թէ Էսկի Շէհիրի արեւելեան կողքին եւ ստորոտին տուները հեղեղներու եւ աւազի փոթորիկներու եւ աւերումներու հետեւանօք հողով ծածկուած՝ անյայտ եղած են եւ միայն քանի մը մասեր ազատ մնացած են, այսինքն Պանչէ Պաշըի մօտ գտնուող Յոյն թաղը։

Իսկ Հայոց բնակավայրն էր արեւմտեան կողմը Քէօյերգան Մահլէսի, Պաքքալ Մահլէսի եւ Զօզալուզի կողմերը։

Իր տեսութեամբ, որ թերեւս աւանդութեան մը արձագանգն է, պարիսպէն դուրս գտնուող այս Յոյն թաղը կը յարաբերէր պարիսպին մէջ գտնուող Յոյն թաղին հետ որ իրենց մօտիկն էր, իսկ Պաթթալ Մահլէի Հայերը կը յարաբերէին իրենց մօտիկը գտնուող պարիսպին մէջ հաստատուած Գապլը Գաբուի եւ Պօյաճը Գաբուի Հայերուն հետ։

Հայոց հին բնակավայրը իբր թէ կը գտնուէր Գանձանակ Խանի

եան կողմը, որ վերջերը կը կոչուէր Ճընկըլլը Օղլու Սօգաղը։

Յոյները պարսպամէջ քաղաքին Քիչի Գաբուէն մինչև Ղուլանդ Ճամի տարածուած մասը կը գրաւէին և Հայերը՝ — որ թիւով քիչ էին— Իչէրի Շարի արեւմտեան մասը։

Տիգրան Ֆրէնկեանի այս տեղեկութեանց ինչինչ մասերը երկրայելի են։ Մասնաւորապէս Էսկի Շէհիրէն մինչև Պահչէ Պաշը տարածուած քաղաքին մասին ըսածները կը կարօտին սրբագրութեան թէև բոլորովին անհիմն չեն, քանի որ Բիւզանդական քաղաքը բայց ոչ թրքական Կեսարիան հոն կառուցուած էր։

Հաւանական է ընդհակառակը մտածել թէ արդի Կեսարիոյ հիմնուելէն յետոյ պարսպապատ քաղաքին արևելեան մասին մէջ Յոյները և արևմտեանին՝ Հայերը հաստատուած և քաղաքը դէպի դուրս ընդարձակուած ատեն՝ Հայերը դէպի արեւմուտք՝ իրենց Ներքին թաղին կից և Յոյները՝ դէպի արեւելք իրենց նախկին բնակավայրին կից թաղեր կազմած են։ Քաղաքը ունի 114 (Ննաճխարճիկ բառարան) կամ ըստ Տիգրան Ֆրէնկեանի, 108 թաղեր որոնցմէ 28ին մէջ միայն Հայեր կը բնակէին։ Տիգրան Ֆրէնկեան կը թուէ այդ թաղերը, որոնց թիւը ինչպէս կը տեսնուի 25 է միայն։

Երեք թաղերու անունները հաւանօրէն իր յիշողութենէն վրիպած են։ Իր յիշատակած հայաբնակ թաղերն էին.

1. Քիչի Գաբու, 2. Կիւրնիւ, 3. Էմիր Սուլթան, 4. Սարզ. 5. Հասինլի, 6. Ճուեուրպան, 7. Պէօյիւք Օեուննու, 8. Օեուննու Կարապետ, 9. Ֆըրընըր, 10. Սայանը, 11. Պանչէ, 12. Քէօյերքան, 13. Սել Ալթը, 14. Հասան Ֆագը, 15. Թոքոզքու, 16. Սրնըզնը, 17. Խարբուք, 18. Ֆարսախ, 19. Ջագալըգ, 20. Գարա-Կէչի, 21. Թավուզնու, 22. Թավուզնու Պէլկիսի, 23. Քէֆլիֆ, 24. Տաեըր, 25. Տաեըր-Խարբուք:

Գ.

## ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԹԻՒԸ

Կեսարիա իբր ծաղկեալ և մեծ քաղաք մը՝ մանաւանդ հին դարերու մէջ պէտք էր ունենար նաև համապատասխան ալ բնակչութիւն մը, որուն ճշգրիտ թիւին վրայ գաղափար մը կազմել կարելի չէ, քանի որ հազուագիւտ են այս մասին յիշատակութիւններ։

Դժբախտաբար, բաց ի միակ պարագայէ մը, որ շատ նշանակելի է, իր այն հանգամանքով որ պատկառելի կը կացուցանէ Կեսարիան՝ իբր քաղաք, իր շատ մեծ թուով բնակչութեամբը, ուրիշ յիշատակութիւն չունինք։

Ըստ Զոնարասի (էջ 234) անիկա միայն երկրորդական քաղաք մըն էր, այլ սակայն 400000ի չափ բնակիչ ունէր երբ 260ին Շապուհ Ա. Սասանեան (242—272) եկաւ զայն գրաւել և կոտորել անխնայ անոր բնակչութիւնը (տես վերը էջ 224-225)։ Միայն այս պարագան ցոյց կուտայ թէ քաղաքը որքան մեծ կեդրոն մըն էր և որքան բազմամարդ ու ճոխ։

Ս. Բարսեղի ժամանակ եւս կը յիշուի թէ վերաշինուած քաղաքը խիստ բարգաւաճ զարգացում մը ունեցած էր, սակայն չէ յիշուած թէ որքան բնակիչ ունէր։



Հռովմէական և Բիւզանդական տիրապետութեան տակ Կեսարիոյ մեծ կեդրոնի մը հանգամանքը անժխտելի ըլլալով, բնական է հետեւցնել թէ միշտ ալ ճոխ և բազմամարդ բնակչութիւն պէտք է ունեցած ըլլայ։

Իր անշքացումը կ'սկսի իսլամական տիրապետութեան ենթարկըւելէն յետոյ, մասնաւորապէս Օսմ. Իշխանութեան շրջանին ուր հետզհետէ անոր բնակչութիւնը կարծես թէ կը պակսի, բնական ու բռնական միջոցներով։

Դժբախտաբար կը պակսին առատ աղբիւրներ, հին թուականներէ սկսեալ, վիճակագրական տուեալներու, որպէսզի որոշ պարզուէր բնակչութեան ելեւէջները այս յարափոփոխ ճակատագրով քաղաքին, որուն արդի բնակչութիւնը, մէկ տասներորդն է հազիւ, Շապուհ Ա.ի օրերու բնակչութեան։

Հազիւ վերջին 120 տարիներէն կան ուղեւորներու կողմէ նշանակուած կամ պետական մարդահամարներէ քաղուած թիւեր, որոնք հոս կը ներկայացնեմ գաղափար մը տալու համար միայն։

Առաջին յիշատակութիւնը 1813ին Kinneirի վիճակագիրն է որուն համաձայն Կեսարիա քաղաքը ունէր՝

| | | |
|---|---|---|
| | 15000 | Հայ |
| | 9550 | Իսլամ |
| | [illegible]00 | Յոյն |
| | 150 | Հրեայ |
| համագումար. | 25000 | բնակիչ |

1839ին՝ Ainsworth, առանց ունէ մանրամասնութեան Կեսարիոյ բընակչութեան թիւը կը նշանակէ 18522։

1852ին Մորդտման որ Կապադովկիա այցելած է 52630 անձ կը նշանակէ Կեսարիոյ բնակչութիւնը, որուն քիչ շատ կը համաձայնի H. Barth, 1858-ին 8-10 հազար տուն հաշուելով քաղաքին բնակիչները։ 1874-ին հրատարակուած պատմական և աշխարհագրական բառարանի մը մէջ (Nouveau Dict. d'Hist. et de Géo. Anc. et Moderne etc., par M.M. Ed. d'Ault-Dumesnil, Louis Dubeaux et l'Abbe A. Crampon, էջ 241) Կեսարիոյ բնակչութիւնը նշանակուած է միայն 25000 թերեւս քիչ մը պակաս գնահատութեամբ, հետեւողութեամբ Kinneirի։

Խալիլ Էտհէմ Թուրք տեղագրողը 70000ի կը բարձրացնէ այդ թիւը։

1896ին R. Oberhummer Zimmerer Կեսարիոյ բնակչութիւնը շուրջ 60000 կը նշանակէ որուն մէկ քառորդը այսինքն 15000ը քրիստոնեայ և անոնցմէ 10000ը Հայ։

Համիլթըն իր «Փոքր Ասիա» գործին մէջ (տես The Imperial Gazeteer, A. General Dict. of Geography etc. by W. G. Blackie հտ. Ա. էջ 40) Կեսարիոյ տուներուն թիւը կը հաշուէ «գրեթէ 10000 որոնցմէ 5000ը կրնայ ըսուիլ թրքական, 2500ը հայկական և 500ը յունական», իսկ բնակչութիւնը կը հաշուէ 70000։ Իրեն հետ համաձայն է Arthur Guy եւս որ նոյնպէս Կեսարիոյ բնակչութեան թիւը նշանակած է 70000, որուն 14400ը Յոյն, 9500ը Հայ և պզտիկ հասարակութիւններ Հայ-կաթոլիկներու և Բողոքականներու։

Vital Cuinet, վճարեալ աշխարհագիրը, 1891ին, Կեսարիոյ բնակ-

չութիւնը կը նշանակէ համաձայն անոնց (պզտիկ տարբերութեամբ մը) հետեւեալ կերպով.

| | |
|---|---|
| 45600 | Իսլամ |
| 14400 | Յոյն-Օրթոտոքս |
| 9000 | Հայ |
| 800 | Հայ-Կաթոլիկ |
| 1200 | Բողոքական |
| համագում. 71000 | բնակիչ |

Բրիտանական Համայնագիտարանը (տպ. 1911-1912ի, Դ. հատ.) Sir O. Wilsonի համաձայն կը համարէ Կեսարիոյ բնակչութիւնը 50000 որուն 23.000ը քրիստոնեայ։

1914ին Baedekerի համաձայն Կեսարիա ունէր 54000 բնակիչ որուն միայն մէկ երրորդը՝ քրիստոնեայ։

Nouveau Atlas Larousseի համաձայն Կեսարիա հիմա ունի 49505 բնակիչ, մինչ 1927ին Թուրք կառավարութեան կատարած մարդահամարին համաձայն (որ շատ վստահելի չէ) Կեսարիա ունէր 40000 բնակիչ։

Գալով Հայ աղբիւրներու, անոնց հնագոյնը Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեանի Աշխարհագրութիւն է (1806ին տպ. Վենետիկ) որ կու տայ հետեւեալ թիւերը.

| | | |
|---|---|---|
| 6000 | տուն | Իսլամ |
| 2000 | » | Հայ |
| 1500 | » | Յոյն |
| համագում. 9500 | » | |

Ինչպէս կը տեսնուի այս վիճակագրութիւնը որ գրեթէ միակն է Հայ աղբիւրէ մը քաղուած, բնաւ չի համաձայնիր 1813ին, հազիւ 7-8 տարիներ յետոյ Kinneirի տուած թիւերուն, ուր քաղաքը աւելի Հայ կը ներկայացուի իր 15000ի Հայ բնակչութեամբը, ինչ որ եթէ իրական ըլլար, Հ. Ինճիճեանի կողմէ անշուշտ պարծանքով պիտի նշանակուած ըլլար։ Իրմէն կէս դար յետոյ, ուրիշ հմուտ աշխարհագիր Վենետիկեան վարդապետ մը՝ Հ. Ղեւոնդ Ալիշան, իր Աշխարհագրութեան մէջ, համօրէն քաղաքին բնակչութիւնը կը նշանակէ 20,000 և հայերուն թիւը անոնց մէջ 6-8 հազար (էջ 558), ինչ որ շատ համաձայն չի թուիր ուրիշ աղբիւրներու։

Մօտաւորապէս հարիւր տարի վերջը Հ. Ինճիճեանէն ուրիշ Վենետիկեան վարդապետ մը գրեթէ անոր նշանակած թիւը կը ներկայացնէ, Կեսարիոյ բնակչութիւնը նշանակելով 10223 տուն (Բնաշխարհիկ Բառարան)։

1883ին Յակոբ Գ. Զամուրեան, Կեսարիոյ մասին գրած յօդուածաշարքի մը մէջ (տես. Մասիս թ. 3401, 1883 փետր. 5) Կեսարիոյ բնակչութիւնը կը նշանակէ 18000 տուն, (որուն 5000ը Հայ), 70000 անձով։

1889ին Ղեւոնդ քհ. Տ. Ստեփանեանի ուղեգրական մէկ յօդուածաշարքին մէջ (տես Փունջ, թ. 2170, 1889, Սեպտ. 30) Կեսարիոյ բնակչութիւնը կը նշանակուի 11000 տուն, 6000ը Թուրք, 4000ը Հայ և մնացեալը Յոյն և Բողոքական։



1897ին թղթակից մը Կեսարիայէն կը գրէր թէ 50.000 բնակիչ ունէր քաղաքը, որուն 16000ը Հայ (Բիւզանդիոն, թ. 162)։

Տիգրան Ֆրէնկեան տուներու թիւը կը նշանակէ 12000 և բնակչութեան 43000։ Իր կարծիքով, Կեսարիա ունէր

| | | |
|---|---|---|
| 7500 | տուն | Իսլամ |
| 3000 | » | Հայ |
| 600 | » | Հայ-Բողոքական |
| 300 | » | Հայ-Կաթոլիկ |
| 600 | » | Յոյն |

1901ին Կ. Կ. Տէվէլեան (Սուրհանդակ, թ. 591) 15000 տուն բնակիչ կու տայ Կեսարիոյ, ո՛չ անշուշտ ճշգրիտ վիճակագրութիւն մը տալու համար այլ ընդհանուր նկարագրականի մը մէջ ուր շատ ճըշդութիւն կարելի չէ փնտռել։ Յակոբ Թէրզեան որ 1905ին այցելած է Կեսարիա, իր ուղեւորութեան յուշերուն մէջ բուն քաղաքը 20000 տուն, իսկ շրջակայ գիւղերով 30000 տուն կը նշանակէ (Բիւզանդիոն, թ. 2553)։

Իսկ 1915ին Բիւզանդ Քէչեան (Բիւզանդիոն, թ. 5582) արձագանգ ըլլալով Թանինի դէպի Կովկասեան ճակատ ուղեւորող պատերազմական թղթակիցին կը նշանակէ 13000 տուն և 60000 բնակիչ, որ Հայոց և Յունաց մեկնումէն յետոյ անխուսափելի կերպով պէտք է 40.000ի իջած ըլլայ։

* * *

Գալով Կեսարիոյ Հայոց վիճակագրութեան, հնագոյն յիշատակութիւնը որ մեզի կը հասնի 1617 թուականին Սիմէոն Դպիր Լեհացիի ուղեգրութեան այն տողերն են որով կը հաստատէ թէ Կեսարիա այդ թուականներուն ունէր «հինգ հարիւր տուն Հայ եւ աւելի կայր ի նմա», ուստի մօտաւորապէս 2500 Հայ բնակիչ ունէր Կեսարիան երեք դար առաջ։

Ինչպէս տեսանք արդէն Հ. Ղուկաս Ինճիճեան, 1806ին Հայ տուներու թիւը 2000 կը նշանակէ, իսկ զանազան օտար և Հայ աշխարհագիրներ և վիճակագիրներ, շարունակ 2000-2500 տուն և 9-10 հազար անձ կը ներկայացնեն Հայոց թիւը Կեսարիոյ մէջ, ինչպէս վերը տեսնուեցաւ։

1891ին Տրդատ եպ. Պալեանի կազմած վիճակագրութեան համաձայն Կեսարիոյ Հայ բնակչութեան պատկերը հետեւեալն էր (տես Ծաղիկ, 1891, թիւ 41).

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Հայ . . . . | 2500 | տուն | 6850 | այր | 6980 | կին |
| Հայ-Բողոքական | 75 | » | 250 | » | 265 | » |
| Հայ-Կաթոլիկ | 40 | » | 175 | » | 220 | » |

1897ին դարձեալ Առաջնորդարանէն քաղուած տեղեկութիւններու համաձայն (տես Բիւզանդիոն, թ. 358), Կեսարիոյ Հայերուն թիւը, որոնք հաւատարիմ մնացած էին Հայ Եկեղեցիին, հետեւեալն էր.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 7304 | արու | | | |
| 7317 | էգ | | | |
| 121 | արու | օտար | տեղերէ | եկած |
| 24 | էգ | » | » | » |
| Համագումար 14766 | | | | |

ինչ որ իրական թիւ մը չէր վասնզի ինչպէս կը հասկցուէր, այս թիւին մէջ էին 2000 կեսարացիներ, որոնք կը գտնուէին Կ. Պոլիս, Իզմիր, Եգիպտոս, իբր գաղթական կամ պանդուխտ, և Պէտէլը Ասկէրիյէի տոմարներէն չէին ջնջուած և իբր տակաւին Կեսարիա բնակող՝ զինուորական տուրք կը վճարէին։

Ուստի քաղաքին մէջ կային հազիւ 12.000 Հայեր։

Հակառակ Հայոց աւանդական դարձած բազմածնութեան եթէ Հայերու թիւը չէ աճած Կեսարիոյ մէջ, պատճառն այն է որ կեսարացիք շարունակ մեծ թուով գաղթած են, եթէ ոչ միշտ ծնունդները մահերէն աւելի եղած են։

Ահիկա կը հաստատեն մարդահամարի արձանագրութիւնները։

Այսպէս 1896ի արձանագրութեանց համաձայն

Ծնունդներն են 374 { արու 197, որոնց 172ը տեղացի և 25ը դրսեցի
էգ 177, » 164ը » » 13ը »

Ամուսնութիւններ՝ 112 { 95 կոյս ընդ կուսի
9 այրի ընդ կուսի
8 այրի ընդ այրւոյ

Մահեր՝ . . . . . 144 { արու 85, որոնց 80ը տեղացի և 5ը դրսեցի
էգ 59, » 54ը » » 5ը »

Ինչպէս կը տեսնուի ծննդոց առաւելութիւնն է՝ 230։

Շահեկան է աւելցնել թէ ամուսնութիւնները կնքուած են 23–35 տարեկան այրերու և 16–20 տարեկան աղջիկներու միջև։

Գալով մեռնողներու տարիքին, մինչև

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | տարեկան | մեռած | է | 18 | արու | և | 8 | էգ |
| 1— 5 | » | » | » | 16 | » | » | 7 | » |
| 6— 10 | » | » | » | 8 | » | » | 6 | » |
| 11— 15 | » | » | » | 4 | » | » | 2 | » |
| 16— 20 | » | » | » | 4 | » | » | 4 | » |
| 21— 30 | » | » | » | 6 | » | » | 3 | » |
| 31— 40 | » | » | » | 8 | » | » | 2 | » |
| 41— 50 | » | » | » | 8 | » | » | 4 | » |
| 51— 60 | » | » | » | 10 | » | » | 6 | » |
| 61— 70 | » | » | » | 6 | » | » | 6 | » |
| 71— 80 | » | » | » | 7 | » | » | 6 | » |
| 81—100 | » | » | » | 5 | » | » | 5 | » |
| | | | | 70 | » | | +59 = | 129 |

Իբր եզրակացութիւն այս վիճակագրութեան ըսենք թէ

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ծնունդներու | համեմատութիւնն | է | 8 | առ հարիւր |
| Ամուսնութեանց | » | » | 1 | » |
| Մահերու | » | » | 1 1/2 | » |

Դժբախտաբար այսպէս մանրամասն չեն շարունակուած այս վիճակագրութիւնները։

Միայն յաջողեցայ գտնել վիճակագրական տախտակ մը



1896 Յունուար 1էն մինչև 1900 Դեկտ. 31 հինգ տարիներուն, որ հոս կը ներկայացնեմ, իբր շահագրգռական պատկերը Կեսարիոյ Հայոց բազմածնութեան (տես Բիւզանդիոն, թ. 1386)։

## ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

### Կեսարիոյ Հայ բնակչութեան 1896 — 1900 տարիներու

| ՏԱՐԻ | ԾՆՈՒՆԴ | | | ՄԱՀ | | | ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆՔ | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ԱՐՈՒ | ԷԳ | ԳՈՒՄԱՐ | ԱՐՈՒ | ԷԳ | ԳՈՒՄԱՐ | ԿՈՅՍ ԸՆԴ ԿՈՒՍԻ | ԱՅՐԻ ԸՆԴ ԿՈՒՍԻ | ԱՅՐԻ ԸՆԴ ԱՅՐՒՈՅ | ԳՈՒՄԱՐ |
| 1896 | 196 | 178 | 374 | 86 | 59 | 145 | 103 | 12 | 6 | 121 |
| 1897 | 184 | 184 | 368 | 205 | 147 | 352 | 89 | 15 | 5 | 109 |
| 1898 | 215 | 185 | 400 | 108 | 120 | 228 | 127 | 17 | 13 | 157 |
| 1899 | 214 | 207 | 421 | 161 | 141 | 302 | 106 | 13 | 2 | 121 |
| 1900 | 326 | 196 | 432 | 84 | 97 | 181 | 103 | 12 | 5 | 120 |
| ԳՈՒՄ. | 1135 | 950 | 1995 | 644 | 564 | 1208 | 528 | 69 | 31 | 628 |

Ահիկա, ինչպէս կը տեսնուի, երբեք չ'եղծաներ այն եզրակացութիւնները որոնք 1896ի վիճակագրութիւններէն կը քաղուէին, ընդհակառակը կարծես թէ ծնունդներու թիւը աւելի կ'աճի։ Իբր ընդհանուր եզրակացութիւն կը տեսնուի հինգ տարուան ընթացքին 787 ծնունդներու առաւելութիւն մը որ նպաստաւոր կրնայ նկատուիլ։

Սակայն ամենայն ինչ անստոյգ ու անհաստատ է Թուրքիոյ մէջ ուր փոթորիկներ կը հնձեն մարդկային կեանքերը ո՛չ թէ մէկով, երկուքով այլ հազարաւորներով, ինչպէս 1915ի աղէտի տարին ուր ջարդը և տեղահանութիւնը գրեթէ ամբողջովին հնձեցին Կեսարիոյ Հայութիւնը։ 1918ի զինադադարէն յետոյ անապատներու մէջ թափառիկ բազմութիւններէ աննշան խլեակներ և ուրիշ անատոլեան քաղաքներու բնակիչներ հոն ամփոփուեցան և ջանացին վերակազմել իրենց տունը և տնտեսական կացութիւնը։

Այս շրջանէն ունինք դարձեալ հետեւեալ վիճակագրական տեղեկութիւնները։ Այսպէս Կեսարիոյ մէջ կ'ապրէին (Տարեցոյց Ազգ. Հիւանդանոցի, 1925, էջ 141)։

1924ին 2653 անձ { 1114 բուն կեսարացի
1141 Բումտէյինցի
398 զանազան տեղացիներ

1925ին գրեթէ անփոփոխ կը մնայ այս կացութիւնը (1926ի Նոյն Տարեցոյց, էջ 92), իսկ 1926ին ասոնց թիւը կը նուազի (1927, Նոյն, էջ 337), վասնզի կ'իջնէ 2348ի, հետեւեալ կերպով ստորաբաժնուած.

| | ԲՆԻԿ ԿԵՍԱՐԱՑԻ | ՐՈՒՄՏԷ-ՑԻՆՑԻՆԵՐ | ԶԱՆԱԶԱՆ ՏԵՂԱՑԻՔ |
|---|---|---|---|
| ԱՅՐ | 225 | 168 | 131 |
| ԿԻՆ | 358 | 239 | 196 |
| ՏՂԱՅ | 224 | 208 | 117 |
| ԱՂՋԻԿ | 227 | 158 | 99 |
| ԳՈՒՄԱՐ | 1034 | 773 | 543 |

*1927ին տրուած տեղեկութեան մը համաձայն Կեսարիոյ քաղաքին բնակչութիւնը նշանակուած է 500 տուն (1929ին տարեցոյց, էջ 366), կամ 2347 անձ (1929ի տարեցոյց, էջ 310) որ յաջորդ 1928ի տարին կ'իջնայ 1930 հոգիի և 335 տունի (նոյն)։ Ասոնցմէ 140 տունը միայն բնիկ կեսարացիներ (144 այր, 190 կին, 186 մանչ և 180 աղջիկ, համագումար 700 հոգի), մնացեալները զանազան տեղացի որոնց մանրամասն վիճակագիրը հրատարակուած է (տես 1929, Տարեցոյց, էջ 310-311)։ 1932 Յունվար 1ին կազմուած վիճակագրութեան մը համաձայն Կեսարիոյ Հայ բնակչութիւնն էր 397 տուն (148 բնիկ, 83 Րումտէյինցի և 166 զանազան տեղացի) և 1600 անձ (554 բնիկ, 331 Րումտէյինցի և 715 զանազան տեղացի)։*

*Այս թուականէն յետոյ կատարուած փոփոխութեան մասին տեղեկութիւն չունինք, սակայն շատ որոշ է թէ անոնց թիւը հետզհետէ պակսելու վրայ է և ո՛չ թէ աւելնալու։*

* * *

*Կեսարիոյ ազգաբնակութեան թիւին վրայ տրուած այս տեղեկութիւնները փակելէ առաջ հոն ապրող բնակչութեան ցեղագրութեան մասին մի քանի տող բացատրութիւն կ'արժէ տալ։*

*Աւելորդ է կարծեմ ըսել թէ Յոյն-Օրթոտոքսները սերունդներն են Բիւզանդական շրջանի Օրթոտոքս բնակչութեան և յաջորդները՝ Բիւզանդացւոց կողմէ ընդգրկուած «մէկ ազգ, մէկ կրօնք և մէկ պետութիւն» դաւանանքին հետեւանօք յունացած բնիկ կապադովկիացիներու, և հոն իբր գաղթական եկող զանազան ժողովուրդներուն, մասնաւորապէս շատ մեծ թուով Հայերու։ Ուստի ան օրթոտոքս էր բայց բնաւ երբեք Յոյն կամ զտարիւն Հելլէն, այլ բնիկ ժողովուրդին օրթոտոքսութեան յարած մասը, և իր այս հանգամանքով մեծ նմանութեան եզրեր ունէր բուրքերու և սովորութեանց տեսակէտով իրեն բնակակից Թուրքերու և Հայոց հետ, որոնք նոյնպէս բնիկներ կրնան համարուիլ։*

*Թուրքերը՝ ինչպէս արդէն բացատրուած է խլամացած տեղացիներ էին մեծ մասամբ և մէկ մասն ալ Թուրքմէններու սերունդներ, որոնք Սելջուկեան շրջանին հոն հաստատուած են։ Նախապէս թուով աննշան, բազմացած են բռնական ու այլ միջոցներով, տեղացիները խլամացնելով։ Հետեւաբար հանգիտութիւններ և նմանութիւններ շատ կան իրենց և բնիկ ժողովուրդներու միջև։*

*Հայերը՝ ինչպէս կարելի մանրամասնութեամբ բացատրուեցաւ (տես. Բ. մաս), շարունակ Հայաստանէն հոն տեղափոխուած են, սկսեալ անյիշատակ ժամանակներէ և հակառակ անոր որ միշտ բնիկ տարրերու խառնուելով իրենց ազգութիւնը կորսուած, սակայն միշտ ապրած են Կապադովկիոյ մայրաքաղաքին մէջ, ստանալով Մայր-Հայրենիքէն նոր տարրեր, որոնք պարբերաբար զօրացուցած կամ ամրացուցած են սպառելու սահմանին հասած այս գաղութը։*

*Հակառակ այն աւանդութեան թէ Կեսարիոյ մէջ Հրեայ երբեք չէ եղած, հին ժամանակները Կեսարիա պէտք է ունեցած ըլլայ զօրաւոր Հրեայ համայնք մը, վասնզի հրեայ աւանդութեանց համաձայն Սասանեան Շապուհ Ա. 260ին, իր փոքր Ասիա արշաւի միջոցին առնուազն 12000 Հրեայ ջարդած է* (Paul Wissowa, *տես.* Encyclopédie de l'Islam. Dictionnaire géographique, ethnographique et biographique des peuples Musulmans, 1924, Paris. *էջ* 701)*։ Սեբէոս (էջ 78) նաև կը հաստատէ թէ 610ին Կեսարիոյ մէջ Հրեաներ կային որոնք քաղաքին վրայ յարձակող Պարսից կողմը կ'անցնին։*

*Տեսնուեցաւ արդէն թէ 1813ին* Kinneir *կը հաշուէր հոն 150 հրեայ բնակիչներ, որոնք կ'երեւայ թէ քիչ յետոյ ցրուած են չտոկալով Հայոց մրցումին։*

*Անշուշտ այս պարագան է որ Հայերը յաւերժացուցած են աւանդավէպով մը որուն համաձայն Հրեայ մը Կեսարիա կը մտնէ, հոն հաստատուելու մտադրութեամբ։ Բաւական շրջելով ա՛յս ու ա՛յն կողմ, կը տեսնէ որ հասարակութեան մէջ Հրեաներ երբեք չեն երեւար։ «Ուրեմն, կ'ըսէ ինքն իրեն, այս տեղի ժողովուրդը միամիտ է, հետեւաբար կրնանք դիւրութեամբ մեր հացը ճարել»։ Հրեան այսպէս մտածելով փողոցէ մը կ'անցնէր, երբ յանկարծ չորս-հինգ տարեկան երեխայ մը իր ուշադրութիւնը գրաւեց, որ* պէճի-պիրլիկ *ոսկիի մը հետ կը խաղար։ «Ահա՛ քեզի հինգ վեց հատ այդպէս փարա», կ'ըսէ Հրեան, երեխային ցոյց տալով քանի մը հատ պղնձէ քառասունոցներ։ Երախան զարմացական նայուածք մը ձգելով Հրեային ու անոր ցոյց տուած պղնձէ դրամներուն վրայ, կը պատասխանէ. «Ես, առանց այդ փարաներն ալ առնելու, կու տամ իմ ձեռքիս այս փարան, եթէ յանձն առնես երեք անգամ իշու պէս զռռալ»։ Շահախնդիր ու խաբեբայ Հրեան իր չորս կողմը նայելով որ մարդ-մուրդ չըլլայ, կ'սկսի երեք անգամ զռռալ։ Եւ երբ Հրեան կ'աւարտէ իր անճոռնի ու այլանդակ զռռզռռուկը, երեխային կ'ըսէ՝ «Դէ՛հ տուր այդ փարան»։ Երեխան ծիծաղելով կը պատասխանէ. «Ա՛յ էշ, դուն քու էշ հալովդ հասկցար որ այս ձեռքիս փարան ոսկի է, հապա ես մարդ հալովս չե՞մ հասկնար որ այդ ցոյց տուածներդ պղինձ են»* [Կայծոռիկ (=Հրաչեայ Աճառեան), ԲԻՒՐԱԿՆ, ԺԶ. տարի, թիւ 51-52, էջ 895]։

*Կեսարացիք՝ աւանդօրէն պատմելով Իսրայէլի որդւոյն այս ձախող փորձառութիւնը կ'ըսեն թէ զարմանահար Հրեան իր ոտքին փոշին թօթափելով Կեսարիայէն կը հեռանայ և անկէ յետոյ իր ցեղակիցներէն ո՛չ ոք կը համարձակի հոն ոտք կոխել։*

*Այդ աւանդավէպի մէկ ուրիշ զանազանակը ըլլալ կը թուի հե-*

տեսեալը որ բարեկամս Պարոն Լեւոն Թիւթիւնճեանի մանրավէպերու հաւաքածոյէն քաղելով կը ներկայացնեմ.

«Ժամանակով Հրեային մէկը Կեսարիա կ'երթայ հոն հաստատուելու և գործ մը բռնելու մտադրութեամբ։ Քաղաքէն ներս մտած ատեն կը տեսնէ տղաքներ որոնք դաշտին մէջ կը խաղային։ «Զօնութեան ալ հապէրի»ի փիսկինութեամբ և կամ միամիտ տղոց բերնով գաղտնիքը կորզելու իսկիւզարութեամբ, խորամանկ Հրեան տղաքներուն կը մօտենայ.

—«Հոս ի՞նչ շահաւոր գործ կայ ընելիք,» կը հարցնէ։ Տղայոցմէն մին Հրեային կը դառնայ և խորհրդաւոր ձեւով մը.

—«Ինծի և ընկերներուս տասնական փարա ցնծայ և քեզի կ'ըսեմ» կը յայտնէ։

Հրեան մէթալիկները կը ցնծայ, որմէ վերջ տղան հետեւեալ ձեւով կը խրատէ Հրեան։

—«Կեսարիոյ մէջ փաստրմա կը շինեն, եզը մորթելնուն ետքը կենդանիին իսկէմպէնները և աղիքները կը նետեն, դուն եթէ իսկիւզար մարդ ես կը ժողվես ատոնք, մէջինը կ'ուտես, փորդ կը կշտանայ... իսկէմպէններն ալ կը ծախես վաստակդ կը հանես», կ'ըսէ։

Հրեան այս պատասխանէն կը հասկնայ որ այդ քաղաքին մէջ... Հրեային հաց չկայ։ Երբ մանուկներն անգամ յորովայնէ ընտրեալ են... մեծերն ա՛լ կարելի է երեւակայել, խորհելով, քաղաք չմտած կը դառնայ։

Իրաւ ալ զարմանալի երեւոյթ մըն է որ Կեսարիան բաւական կարեւոր առեւտրական կեդրոն մը ըլլալով, չէ հրապուրած Հրեաները, որոնք գէթ վերջին 100 տարիներուն հոն բնաւ չեն բնակած։

Դ.

## ՔԱՂԱՔԻՆ ԱՆՑԵԱԼԻ ՄԷՋ ՈՒՆԵՑԱԾ ՎԻՃԱԿՆԵՐԸ ԵՒ ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ինչպէս տեսնուեցաւ արդի Կեսարիան հազիւ 7-8 հարիւր տարիներու կեանք մը ունի, թէև քաղաքին տրուած Կեսարիա անունը շատ աւելի հին գործածութիւն։ Ասիկա իրողութիւն մըն է, որքան որ ալ ան հակասական թուի։

Կեսարիա քաղաքը՝ նոր քաղաք մըն է կառուցուած նոյն անուն հին քաղաքի մը տեղը, պզտիկ տեղափոխութեամբ մը, որ ո՛չ միայն այս նոր քաղաքին կառուցուած ատեն այլ պատմական ժամանակամիջոցներու մէջ ուրիշ 3-4 անգամներ ալ կատարուած է։

Արդարեւ հնագիտական պեղումներ և հետազօտութիւններ ցոյց կու տան թէ Արգէոսի ստորոտը անյիշատակ ժամանակներէ ի վեր գոյութիւն ունեցած է մայրաքաղաք մը որ պատմական ժամանակներու մէջ զանազան տեղափոխութիւններ ունեցած է մինչեւ արդի քաղաքին կառուցումը առանց վճռաբար կարենալ յայտարարելու թէ աւելի հնագոյն և դեռ չլուսաբանուած շրջանի մը մէջ, ուրիշ տեղափոխութիւններ և ուրիշ քաղաքներ չեն գտնուած այս շրջանակին մէջ։



Ցարդ յայտնուած քաղաքները որոնք Կեսարիոյ տեղը կը բռնէին նախ քան արդի քաղաքին կառուցումը՝ են.

1. ԿԱՆԷՇ.— Հնագոյն մեզի ծանօթ մայր-քաղաքը որ Արգէոսի ստորոտը կառուցուած էր, նոյնիսկ Նախահաթեանց շրջանէն Կանէշն (Kanes) էր, որ կը գտնուէր 'ի հարկէ հոն ուր անոր բոլորն ալ առեւտրական բովանդակութեամբ 1000 պիւսագիրներէ բաղկացեալ առեւտրական դիւանը գտաւ Բրոֆ. Հրոզնի։ Ան կը գտնուէր արդի Կեսարիայէն գոնէ 3 ժամ հեռու Գարա-Իւիւք կամ Գարա Իւք գիւղին մերձակայ Քիւլթէփէ կոչուած վայրը, որուն աւերակներուն անդրանիկ նկարագրութիւնը ըրած է Barth (ՀԱ. 1900, 115)։

Ինչպէս այս հատորին Բ. մասին մէջ մանրամասնօրէն բացատրըուած է Կանէշ Բաբելական գաղութ մըն էր Աքատեան Սարգոնի ժամանակ (իբր Քր.է առաջ 2800 տարի) և առեւտրական յոյժ կարեւոր կայան մը, ինչպէս կը հասկցուի բեւեռագիր արձանագրութիւններէ (ՀԱ. 1932, 171. տես վերը, 70-86)։

Անիկա ընդարձակ առեւտրական յարաբերութիւններ ունէր ամէն կողմի հետ և մասնաւորապէս այդ ժամանակներու համաշխարհային վաճառականական կեդրոնին՝ Միջագետքի հետ (Տաշեան, ՀԱ. 1933, էջ 426, 1931, էջ 51, ինչպէս նաև Բ. մաս հատորիս)։

Երբ Հնդեւրոպական Հաթերը տիրապետեցին Նախահաթերու երկրին՝ Սեմացիք այլեւս նախ տիրող դեր չունեցան և ի վերջոյ անհետ եղան (ՀԱ. 1932, էջ 171)։

Քրիստոսէ առաջ ԺԲ. դարուն «ծովաժողովուրդներու» արշաւանքին հետեւանօք երբ Հնդեւրոպական ժողովուրդներ, Վոսփորի և Տարտանէլի ճամբով Փոքր Ասիա մտան և աւերակ դարձուցին Հաթեան բոլոր քաղաքները, այդ խառնակութեան միջոցին նաև ապահովաբար անհետ եղաւ Կանէշ (վերը 86)։ Կանէշէն մեզի հասած յիշատակներուն և անոնց կարեւորութեան վրայ արդէն երկարօրէն խօսուած է. ուստի հարկ չեմ դատեր բացատրել անոր կարեւորութիւնը և դերը։

2. ԲՈՒՌՈՒՇԱԹԹՈՒ.— Այս հնագոյն շրջանին որ Արգէոսի ոլորտին մէջ ամենանշանաւոր դեր կատարող քաղաքը՝ Կանէշ էր, ըստ G. Contenauի կարծիքին (տես La Civilisation des Hitites et des Mitanniens, 1934, էջ 69, նաև վերը, էջ 87) արդի Կեսարիոյ տեղն ալ կար քաղաք մը Purushattu անուն, սակայն այս մասին առարկայական ապացոյց մը չունենալով, միայն զայն յիշելով կը գոհանամ։

Անժխտելի է որ Արգէոսի շուրջը Նախահաթեանց և Հաթեանց շրջանին, այսինքն Քր.է առնուազն 3000 տարիներ առաջ թուականներէ սկսեալ, շէն ու բարգաւաճ քաղաքներ գոյութիւն ունեցած են, սակայն անիկա պատճառ մը չէ որ Կեսարիոյ Էսկի Շէհիրի այգեստանին մէկ թաղին Հէթիթլէր Նիյէթի կոչումը և ժողովուրդին բարբառին մէջ գոյութիւն ունեցող Հիթիթլէր բացատրութիւնը, կապ մը ունենայ Հաթ բառին հետ, ինչպէս ոմանք կարծած են վասնզի պարզ նմանաձայնութիւն մըն է։

Թուրքերէն հիթիթ, աղաւաղումն է արաբերէն խէսիս, խէթիթ բառին, որ կծծի, ցածազգի, ոչինչ մարդ կը նշանակէ։ Մարզուան և Ամասիա հոթոթ բառը կը գործածէին նոյն իմաստով։ Հետեւաբար

Հէքիմլէր Նիյէքի(1)= Խասիսլէր Նաճիյէք = կծծիներու թաղ է (Բրոֆ. Ա. Սէյս, Քեսացիք կամ մոռցուած կայսրութեան մը պատմութիւնը, Թրգ. Յ. Վ. Ցակոբեան, 1900, էջ 6, և Բիւզանդիոն, թ. 1094, 1900, Մայիս 15/28)։

3. ՄԱԺԱԿ.— Կանէշի կործանումէն (իբր 1200 Ք.Ե. առաջ) դարեր յետոյ երեւան կու գար ուրիշ քաղաք մը՝ Մաժակ, ծագմամբ Մոսքեան, որ դարեր յետոյ Գամրաց աշխարհին և Կապադովկեան թագաւորութեան մայրաքաղաքը եղաւ։

Առարկայական ու հաստատուն ապացոյց մը չկայ տակաւին ճշդող Մաժակի բուն տեղը։ Շատեր անոր տեղը կը համարեն երկու քիլոմէթր հարաւ-արեւմուտքը ներկայ քաղաքէն, Արգէոսի հանդիպակաց լեռներու վրայ (Encyclopédie de l'Islam, էջ 701)։

Մաժակի ենթադրեալ վայրը կամ կը գտնուէր շուրջ կէս ժամ հեռու Կեսարիայէն, որթատունկ մշակուած բլուրներու վրայ, որոնք Թուրքերը կը կոչէին Էսկի Շէհիր կամ Էսկի Գայսէրիյէ կամ հոն որ Հայերը՝ Զորզաթ (Zorzat)։ Սակայն ընդհանուր համաձայնութիւն չկայ անոր տեղին մասին և միշտ վէճեր եղած են գիտուններուն մէջ։

Zimmerer և Գրոսկենտ՝ Ստրաբոնի Մաժակի նկարագրութիւնը (տես վերը, էջ 215) կարդալով կը կարծեն թէ արդի քաղաքին իշխող այս բարձունքներն են հին Մաժակի վայրը (ՀԱ. 1900, էջ 115)։

Ալիշան կը կարծէ թէ հին Մաժակը կը գտնուէր Պէշ Թէփէլէրի վրայ (Աշխարհագր. էջ 558)։

Տիար Բարսեղ Օհանեան անոր տեղը կը կարծէ թէ պիտի ըլլայ Արաբլար Նէցիկին։

Երուանդ Երկաթեան (տես Բիւզանդիոն, թ. 1084, 1900, Մայիս 3/16) դիտել տալով թէ Էսկի-Շէհիրի այգիները կրային (calcaire) կազմութիւն և ոչ կոպճուտ (silicieux), ինչպէս պէտք է ըլլար լաւայէ կազմուած հող մը, կը հետեւցնէ թէ այլուր պէտք է փնտռել Մաժակը որ կը կարծուի լաւաներու տակ թաղուած։

Հայերու Զորզաթ կոչումը տալը կը հաստատէ Բրոֆ. Ա. Կապրիէլ (Monuments Turcs d'Anadolie, Ա. հտ.) ակամայ հիմնուելով զանազան ուղեգրական երկերու վրայ, որոնցմէ առաջինն է Եղեր Լըժան (Au Yoskat à Cesarée, էջ 7–8)(2)։

Բրոֆ. Ա. Կապրիէլ, Թուրքերու անհաճոյ բան մը ըսած չըլլալու նախահոգութեամբ կ'արտագրէ այս մասին Մ. Քարսթի Սթրազպուրկի մէջ ըրած հաղորդագրութենէն հետեւեալ տողերը. «Այսօր ոչ ոք չի յիշեր այս կոչումը, եւ «զորզոր» հայերէն անուն չէ, անոր մօտիկ բառն է ձոր ձորատ, որ կը նշանակէ խորդուբորդ տեղուանք»։

Ինչպէս իրաւամբ դիտել կու տայ Գ. Ս. Պօղոսեան (Արեւ, թ. 4827)

---

(1) Նիյէք արաբերէն Նաճիյէք, Նաճիյէ բառն է որ թաղ, կողմ, գաւառ կը նշանակէ։ Յ. Վ. Ցակոբեան (Բիւզանդիոն, թ. 1094) կ'ըսէ թէ Մարզուան և շրջակայքը նոյն բառը Նայիա և Նայիաք ձեւով կը գործածեն։ Կեսարիոյ մէջ Նիյէք կ'ըսուի 50–100 կամ աւելի այգիներու տեղը որոնք սահմաններ ունին և այս սահմանին մէջ եղած իւրաքանչիւր այգին, այս ու այն անհատին սեփական է։

(2) Encyclopédie de l'Islam ալ կը հաստատէ Հայերէն այս անունը տրուած ըլլալը այդ վայրին։



ճիշդ չէ Քարսթի այն յայտարարութիւնը թէ «այսօր ոչ ոք չի յիշեր այդ յորջորջումը», վասնզի այսօր իսկ Կեսարիա ապրող Հայ Կեսարացիք անշուշտ դարձեալ այդ վայրը գիտեն և կը ճանչնան Զորզաթ կամ Զրրզոր անունով, և Բրոֆ. Ա. Կապրիէլ, որ Կեսարիա շրջած է, Սթրազպուրկի մէջ սորվելու պէտք չունէր այդ անունը։

Քէմալէտտին (էջ 114) աւելի մոլեռանդ, Բրոֆ. Ա. Կապրիէլէն առնելով, կ'ըսէ թէ Զորզոր ձորձորի կը մօտենայ և անոր իմաստը ձոր, գահավէժ է, իսկ ձորձորատ ալ ելեւէջաւոր տեղ, սակայն չ'ըսեր թէ ինչ լեզուով։

Զըրզորթը այն բլուրն է որ կը գտնուի Հայոց գերեզմանատան քով բարձրացող և Ծընծըզլը կոչուած պատմական մզկիթին մէջտեղը, Հայոց Նոր թաղէն քիչ մը հեռու, ուր կը գտնուի տակաւին աւերակը այն մեծ շէնքին կամ փոքրիկ բերդին, որ կը կոչուի «Զոխում Գայլա» (կամ Գալեա) որովհետև այս գետնին քարքարոտին վրայ բարձրացող այդ ժայռը, իրական ժայռ չէ, այլ հսկայ շէնքի մը կանգուն մնացած մէկ մասը (Ս. Պօղոսեան, Արեւ, թ. 4827)։

Դիտելի է որ Կեսարիոյ Հայ և Յոյն բնակչութիւնը, Զատկի քառասունքին՝ այսինքն Համբարձման օրը(1), որ տեղացիք Վարդավառ կը կոչեն, դաշտագնացութեան կ'երթան Զրրզոր, անշուշտ դարերէ եկած հասած աւանդութեան մը համաձայն։ Այդ օրուան տրուած Վարդավառ հեթանոսութենէ միացած կոչումը և տօնակատարութեան կերպը —որոնց պիտի անդրադառնանք սովորոյթներուն մէջ— արդէն ցոյց կու տայ թէ այդ վայրը հնագոյն անցեալի մը յիշատակներ ունի և ասոր համար հաւանականութիւնը կ'ընծայէ Մաժակի վայրը ըլլալու։

Մաժակ կը յիշուի իբր մայրաքաղաք Կապադովկիոյ կամ ըստ Ստրաբոնի (ԺԲ. 1. 4. Բ. 7) իբր մայրաքաղաք Կիլիկիա նահանգին։

Հ. Յակոբոս Տաշեան կը համաձայնեցնէ այս երկու իրար հակասող տեղեկութիւնները, Մաժակը ներկայացնելով «մայրաքաղաք Կապադովկիոյ, յերկրին այսինքն նահանգապետութեան (praefectura) Կիլիկիոյ» (ՀԱ. 1900 էջ 115)։

Օտարները զայն կը կոչէին Մազաքա (Mazacca կամ Μαζάκα) որ հայերէն տառադարձուած ըլլալ կը թուի Մաժակ։

Մաժակ, ըստ Հրեայ պատմագիր Յովսեպոսի (Հնախօսութիւն Հրէից

---

(1) Գ. Ս. Պօղոսեան (Արեւ, թ. 4827) կարծելով որ Հայերը Ծաղկազարդի օրը կը կատարէին Զրրզորի ուխտագնացութիւնը, կ'ըսէ թէ այդ բառը զարզարդ իմաստով մեկնողներ կային, իբր Ծառզարդարի այսինքն Ծաղկազարդի ուխտագնացութեան վայր, սակայն հիմը սխալ ըլլալով հետեւութիւնն ալ սխալ է կարծեմ։ Իսկ Եղիազարեան Զրրզորը կը կարծէ թէ Հայ վանք մըն է ցրնձոր, այսինքն ցնծութեան վանք անունով, որ իբր թէ ժողովրդային լեզուին մէջ վերածուած է Զրրզորի։ Սակայն Եղիազարեան միեւնոյն ատեն ինքն կ'ըսէ թէ այս ենթադրեալ վանքին մնացորդները շատ նմանութիւն չունին եկեղեցիի մը, բայց քարայրներու խորշիկը և քարերուն վրայ տեսնուած խաչերը և գիրերը սրբատեղի մը կամ ճգնարան մը ըլլալը կը հաստատեն։

Ա. 125) հիմնուած էր Մէշէքէն (Mesech) որ որդին էր Յաբէթի և իբր թէ այս պատճառով քաղաքը կոչուած էր այդ անունով Մաշակա։ Նոյնիսկ երկիրը այս անունով կը մկրտէր Յովսեպոս։ Հրեայ պատմագիրին հետ համաձայն Մաժակ անունը առաջ կը բերեն Մոսոէէն՝ Գամրաց նախահօրմէն, նաև կոստանդին Ծիրանածին («Վասն Թեմաց» Ա. էջ 20) և Փիլոստորգոս (Եկեղեցական Պատմութիւն Թ. էջ 12)։ Մեր պատմահայրը՝ Մովսէս Խորենացի, Մշակ կողմնապետին անունէն առաջ եկած կը համարէ Մաժակը (տես վերը, էջ 204)։ Նշանակութենէ զուրկ չէ անշուշտ [redacted]րենացի եւ նման Յովսեպոսի քաղաքէն զատ երկիրն ալ կը կոչէ Մաժակ անունով (տես Դպ. Բ. գլ. Դ. և Ջ. ԺԴ.)։

Մշակի, Մէշէքի կամ Մասոքի առասպելը գիտական արժէք մը ներկայացնելէ հեռու է, սակայն Մոսքեան ծագումը կը յայտարարեն թերեւս, և կը հաստատեն թէ Մաժակ անուաղն Քր.է առաջ տասը դարերու հնութիւն մը պէտք է ունեցած ըլլայ, թէև Մաժակ յիշուած ըլլայ հազիւ Քրս.է հինգ վեց դար առաջ։

Ինչպէս Ստրաբոնի նկարագրութենէն կը հասկցուի Մաժակ կը ներկայացնէր ոչ միայն մայրաքաղաքի այլ պարզ քաղաքի մը վայրը ըլլալու շատ մը անյարմարութիւններ, վասնզի չունէր ջուր, ամրութիւններ (1) և պատուարներ և կը գտնուէր անբարեբեր երկրի մը մէջ (տես վերը, էջ 215) և կապադովկիոյ թագաւորները զայն եթէ բնակավայր ընտրած էին ուրիշ բանի համար չէր եթէ ոչ երկրին մէջտեղը ըլլալը և փայտ ու քար, և խոտ ունենալը։

Մաժակ ինչպէս կ'երեւայ նախապէս այնքան փայլուն և մեծ քաղաք մը չէր. և յետոյ զարգացաւ երբ Կապադովկիա թափանցեց Յունական քաղաքակրթութիւնը Աղեքսանդրի աշխարհակալութեան և Հռոմի՝ Ասիոյ մէջ կատարած նուաճումներուն հետեւանօք։

Արիարաթ Ե. Եւսեբէս մականուանեալ, որ միեւնոյն ատեն կը կոչուէր Փիլոպատոր ինքն էր որ Յունական քաղաքակրթութեան նկատմամբ իր ունեցած մեծ սիրովը, Յունական նախատիպին համաձայն իր թագաւորութեան մէջ կազմակերպեց երկու մեծ քաղաքներ, Մաժակը և Տիանան, և նոյնիսկ Մաժակի համար ընդունեց Քարոնտասի օրէնքները (տես վերը, 175)։

Հոն կը թափանցեն իր օրով Յունական աշխարհի մշակոյթները (վերը 176)։

Մաժակ հետեւաբար այդ թուականներէն սկսեալ կը դառնայ մեծ քաղաք մը։

Մաժակ ունեցած է իր յատուկ փողերանոցը, Քս.է առաջ 316էն յետոյ, երբ անկախ թագաւորութեան մը վերածուած է։

Նախ քան այդ թուականը Կապադովկիոյ անունով հատուած

(1) Ամրութեան պակասը Հռոմէացի աշխարհագիրը կը վերագրէ անփութութեան և անհոգութեան սակայն շատ աւելի տրամաբանական պիտի ըլլար ասիկա բացատրել —ինչպէս ըրած է Ch. Texier— երկրաշարժներու յաճախութեամբ որ համարձակութիւն չէր տար բնակիչներուն ամփոփուելու շրջապատի մը մէջ, որպէսզի կարենան փրկել իրենց կեանքը յանկարծական և դիւրին փախուստով մը։



դրամները, Պարսիկ Սատրապներէ, կապադովկիոյ մէջ չեն դրոշմուած, այլ Սինոպի և Կիլիկիոյ փողերանոցներուն մէջ։

Մաժակի փողանոցը հատուած կապադովկեան անդրանիկ դրամը Արիարաթ Բ.ի (Քրս.է առաջ 316-280) մէկ պղնձադրամն է որ «կը գտնուի Բրիտանական թանգարանին մէջ, անարուեստ, պէտքի առջև զարնուած և Արամերէն լեզուով արձանագրութեամբ» ինչպէս կը հաւաստէ Տիար Բարսեղ Օհանեան։

Ասիկա կը հաստատէ թէ կապադովկիոյ անկախ թագաւորութեան այս մայրաքաղաքին մէջ կազմուած փողերանոցը նախնական վիճակ մը ունէր։

Արիարաթ Բ.ի յաջորդին՝ Արիարամի (280–230) անունով խնամեալ դրամներ գտնուած են առաջին անգամ յունարէն ΑΡΙΑΡΜΝΟΥ շրջագիրով որուն Ծոփաց կամ Փոքր Հայոց Արշամ թագաւորի դրամին հետ ունեցած նմանութիւնը ոմանց այն կարծիքը տուած է թէ երկուքն



ԹԱԳԱՊԱՀԱՆՋ ԿԱՄ ՅԱՓՇՏԱԿԻՉ ՈՐՈՓԵՌՆԷՍԻ ԴՐԱՄԸ
(Պ. Բ. Օհանեանի հաւաքածոյէն)

ալ Արշամաշատի փողերանոցին մէջ տպուած են (տես վերը, էջ 201), սակայն Պ. Օհանեան կ'ըսէ թէ երկու դրամներուն անարուեստ վիճակը մտածել կու տայ թէ երկուքն ալ թերեւս Մաժակի նորահաստատ փողերանոցին մէջ հատուած են։

Արիարաթ Գ.ի (230–220) իշխանութեան շրջանէն մեզի հասած է արծաթ չորեքդրամեան մը բոլորովին յունական արուեստով (ըստ Տ. Բ. Օհանեանի) որ ապահովաբար պատրաստուած էր Մաժակի փողերանոցին մէջ, որուն արուեստական ինչ կատարելութեան հասած ըլլալուն վրայ գաղափար մը կու տայ մեզի Որոփեռնէս Յափշտակիչին (158-154 Քր. առաջ) (տես վերը, էջ 172-173) դրամը։

Այս փողերանոցին մէջ է որ ապահովաբար տպուեցան նաև կապադովկիոյ անկախ վերջին թագաւորին՝ Արիոբարզանի դրամները։

Մաժակ, ինչպէս տեսնուեցաւ գրաւուեցաւ երբեմն Պոնտոսի Միհրդատ և Հայոց Տիգրան թագաւորներէն։ Մեծն Տիգրան 78ին նոյնիսկ Մաժակի բնակիչները իր նորակառոյց մայրաքաղաքը՝ Տիգրանակերտ փոխադրեց, 11 ուրիշ քաղաքներու բնակիչներուն հետ (վերը 182 և 199)։

Պոմպէոս, որ Հռոմի անունով իբր թէ ազատագրեց Փոքր Ասիոյ այն մասերը որոնք Հայ-Պոնտական զինակցութեան տիրապետութեան տակ ինկած էին, վերահաստատեց նաև կապադովկիոյ թագաւորութիւնը, Հռոմի հովանաւորութեան տակ։

Պոմպէոս այս առթիւ կը վերահաստատէ, կը մեծցնէ և շատ մը իրաւունքներով կ'օժտէ Մաժակը (վերը, 185) որ հաւանօրէն պէտք է կործանած ըլլայ Կապադովկիոյ Հռոմի կցման տարին (17 Քր. յետոյ) պատահած մեծ երկրաշարժէն, որ Փոքր Ասիական բազմաթիւ քաղաքներ կործանեց և Հռոմէացւոց ասիական նահանգը անապատի վերածեց (վերը, 233-234)։ Մաժակի անունը եթէ դուրս ձգուած է այն երախտագէտ քաղաքներու շարքէն որոնց Հռոմ օգնութեան հասաւ առատաձեռն օժանդակութիւններով, իբր իր ստացուածքները, պատճառը այն էր որ Կապադովկիա թերեւս դեռ չէր կցուած և նոյն տարին կցուեցաւ։

4. ԵՒՍԵԲԻԱ.— Մաժակ քաղաքը պահ մը Կապադովկիոյ անկախութեան շրջանին, անուանափոխութիւն մը կ'ունենայ և կը կոչուի Եւսեբիա կամ Եւսեբիա առ Արգէոսի (ἡ πρὸς τῷ Ἀργαιῷ)։ Սակայն ոմանք կը կարծեն թէ Եւսեբիա կոչումը Մաժակի չէ տրուած այլ անոր մօտ նոր շինուած քաղաքի մը,

Հ. Յակոբոս Տաշեան, որուն հեղինակութիւնը անժխտելի է, «խնդրական» կը համարէ տակաւին անոր տեղը և կարծես թէ զայն առանձին քաղաք մը համարելու կուսակից է (ՀԱ. 1932, էջ 171)։ Գ. Բարսեղ Օհաննեան, նոյնպէս կը կարծէ թէ Եւսեբիա նոր կառուցուած քաղաք մըն է, Մաժակէն դէպի հիւսիս-արեւմուտք կէս ժամ հեռու Պէշթէփէլէր կոչուած բլուրներուն վրայ։

Եւսեբիա կոչումին հետ քաղաքը դէպի Պէշթէփէլէր ընդարձակուած ալ կրնայ համարուիլ։

Ստրաբոն, որուն տուած տեղեկութիւնները առ հասարակ վաւերականութեան դրոշմը ունին, Եւսեբիա առ Արգէոսի կոչումը Մաժակի վերագիրը կը համարէ։ Հետեւաբար պէտք է սոսկ անուանափոխութիւն մը նկատել այս կոչումը, որ որուն կողմէ կատարուած ըլլալը յայտնի չէ։

Հ. Յակոբոս Տաշեան կը կարծէ թէ Մաժակ՝ Եւսեբիա կոչուած է թերեւս դրամներու յիշած Արիարաթ Ե. Եւսեբէս, Փիլոպատոր (= հայրասէր) (166-130 Քր.է առաջ) արքային անուամբ (ՀԱ. 1900, էջ 115)։ Գ. Օհաննեան կը կարծէ թէ անոր նախորդը Արիարաթ Դ. (230-166) ստրկամիտ թագաւորը, Հռոմէացիներուն հաճելի ըլլալու համար Եւսեբիա անունը Մաժակի կցած է, իբր պատուանուն, ինչպէս կցած էր իր անունին՝ դրամներուն վրայ։

Ուրիշներ կը կարծեն թէ Քրիստոսէ առաջ 91ին երբ Արիոբարզան Ա. Եւսեբէս (96-63) բնիկ արքայական ընտանիքին պետը, Հռոմայեցւոց պաշտպանութեամբ Կապադովկիոյ գահը գրաւեց և վերջ տուաւ Աքեմէնեաններէն սերած արքայական տան, իր երկրին մայրաքաղաքը՝ Եւսեբիա (յուն. Εὐσεβεία և լտ. Evsebeia) կոչեց (Nouveau Dict. d'Hist. et de Geo. anc. et mod. etc. par M M. Ed. d'Ault-Dumesnil, Louis Dubeaux et l'Abbé A. Crampon. 1874, էջ 241, նաև A Smaller Classical Dict. by William Smith և La Grande Encyclopédie. տես նաև վերը, էջ 184)։

Սակայն Գ. Բ. Օհաննեան, հիմնուելով Բրիտանական Թանգարանի դրամներու բաժինին տնօրէն Barclay V. Headի ցուցակին վրայ (տպ. 1911ին) կ'ըսէ թէ Արիոբարզան Ա. իր դրամներուն վրայ կը կրէր ΦΙΛΟΡΩΜΑΙΘΥ վերագիրը։ Եւսեբէս (=բարեպաշտ) մականունը



առաջին անգամ գործածած է Արիարաթ Դ. (220-166) յետոյ իր որդին Արիարաթ Ե. (166-130) յետոյ Արիարաթ Թ. (96-91) և Արիարաթ Ժ. (42-36)։ Իսկ Արիոբարզաններէն միայն Գ.ը (51-42), ըստ դրամագիտական տուեալներու։

Արդ, Գ. Օհաննեան իրաւամբ կը մտածէ թէ քանի որ Մաժակի բնակչութեան Տիգրանակերտ փոխադրուիլը կը յիշուի գրեթէ դար մը յետոյ Արիարաթ Դ.էն և պոնտական պատերազմներու ընթացքին «Եւսեբիա» բնաւ չի յիշուիր, կը խորհի թէ Արիոբարզան Դ.ի ատեն քաղաքը Եւսեբիա կոչուած պէտք է ըլլայ կամ շատ շատ Արիարաթ Ժ.ի ատեն, որպէսզի Տիգրանի և Պոմպէոսի ժամանակէն յետոյ կատարուած ըլլայ այս անուանափոխութիւնը։

Ստրաբոնի (63 Քր.է առաջ — 19 Քր.է յետոյ) քաղաքը Մաժակ և իբր վերագիր՝ Եւսեբիա կոչումը տրուած ըլլալը յիշելը, փաստ մըն է թէ անիկա արմատացած չէր, և գործածութենէ ինկած չէր Մաժակ անունը, որ քաղաքին կը տրուէր։

Ամէն պարագայի մէջ քաղաքին այս անունը երկար ատեն գործածուած ըլլալ չի թուիր։

5. ՀՌՈՄԷԱԿԱՆ ԿԵՍԱՐԻԱ.— Հռոմէական տիրապետութեան ենթարկուելէ յետոյ երկիրը, կործանած Մաժակին կամ Եւսեբիա առ Արգէոսի քաղաքին տեղ, անոր աշխարհագրական դիրքին կարեւորութեան պատճառով, անշուշտ ոչ բոլորովին նոյն վայրին վրայ այլ շատ մօտը դէպի արեւելեան-հիւսիս, երկու քիլոմէթր հեռու կը շինուի քաղաք մը, որ Կեսարիա (կայսերական) կը կոչուի։

Քաղաքին այս վերաշինութիւնը ե՞րբ և Կեսարիա կոչումը որո՞ւ կողմէ տրուած ըլլալը վէճի տակ է։ Ոմանք քաղաքին վերաշինութիւնը կը վերագրեն Տիբերիոս կայսեր (14-37), անոր որ Կապադովկիան Հռոմէական կայսրութեան կցեց, իսկ ուրիշներ Կղօտիոս կայսեր (41-54) որ հիմնած էր Արքեղայիս գաղութ քաղաքը և վերակազմած՝ Կապադովկիա և Լիկաւոնիա նահանգները (տես վերը 234)։

Ընդհանրապէս ընդունուած է այն կարծիքը թէ քաղաքը շինած է Տիբերիոս, և ի պատիւ Օգոստոս-Կեսար կայսեր, որ իր հայրագիրն էր զայն կոչած է, Կեսարիա (Caesareia)։

Սակայն Ramsay (303) հիմնուելով Սոկրատի եկեղեցական պատմութեան վրայ կը կարծէ թէ Կղօտիոս կայսրն էր զայն հիմնողը, և իր այս կարծիքը կը հիմնաւորէ ո՛չ միայն 41ին Կղօտիոսի կողմէ կատարած ընդհանուր վերակազմութեան փաստով այլ նաև դրամներու գոյութեամբ։

Ramsay կ'ըսէ թէ Կեսարիա անունը բնաւ չէ գտնուած քաղաքին դրամներուն վրայ այս ժամանակէն աւելի կանուխ։ Անոնք որոնց վրայ կը կարդացուին ΕΥΣΕΘΕΙΑΣ ΚΑΙΣΑΡΕΙΑΣ շրջագիրը, կը պատկանին իր թագաւորութեան շրջանին, առաջ քան նոր անունին հինը վանելը (Asia Minor, 303)։ Ramsay տիրող սխալ կարծիքին պատճառը կը նկատէ Տիբերիոս պզտիկ անունին երկու կայսրերուն ալ տրուած ըլլալը (նոյն)։ Ramsayի այս տեսութիւնը ընդունուած է նաև Բրիտանական Համայնագիտարանէն (Encyclopedia Britanique. տպ. 1911-1912ի 4րդ հատոր)։ Ramsayի այս կարծիքին դէմ առարկութիւններ կը յարուցուին ոչ նուազ հեղինակաւոր գիտուններու կողմէ։ Նախ Հայ մեծ հեղինակութիւնը Հ. Տաշեան կ'ըսէ թէ Ramsay

կը սխալի ըսելով թէ Սոկրատ կը հաստատէ քաղաքին շինութիւնը Կլոտիոսէ, վասնզի այդ վկայութիւնը տուողը Սոկրատ չէ, այլ են Սոզոմինոս (Եկեղ. Պատմ. Ե. գ.) և Կասիոդոր (Պատմ. Եկեղ. Երեքմասնեայ Ջ. գլ.) (տես ՀԱ. 1900, էջ 115)։ Հ. Տաշեան նոյնպէս կը յարէ թէ միւս ապացոյցները շատ համոզիչ չեն որ կարենան հնութեան աւանդած տեղեկութիւնները հերքել։ Հ. Տաշեան կը միտի ընդունիլ տեսութիւնները Rugeի և Pauly-Wissowaի (տես Real Enc. էջ 1289 և Encyclopédie de l'Islam, էջ 701 և այլ։ Համտ. նաև Entrop. 7. 11. 2, Suidas Τιβέριος և Καισάρεια բառերը, Յիերոնիմոս, Ժամանակագրութիւն հրատ. Schoeneի 147)։ Սակայն ինչպէս Հ. Տաշեան դիտել կու տար, ուշադրութեան արժանի իրողութիւն մըն է որ Ստրաբոն (ԺԲ. 548) թէև գիտէ Կապադովկիոյ Հռոմէական նահանգի մը վերածուած ըլլալը, բայց կ'անգիտանայ Կեսարիա անունը, որ իր ժամանակէն վերջը պէտք է տրուած ըլլայ քաղաքին, և հետևաբար Հռոմէական տիրապետութիւնէն ոչ անմիջապէս յետոյ։

Կեսարիա անունը նաև որո՞ւ կողմէ տրուած ըլլալը խնդրոյ տակ է։ Տիբերիոս կամ Կլոտիոս քաղաքը շինած ատեն անոր այս անունը տըւած են, ըսուած է, ինչպէս տեսնուեցաւ։ Սակայն տարբեր կարծիքներ ալ յայտնուած են։ Ըստ Սեքստոս Ռուփոսի (Sex. Rufus briviar. 11) Արքեղայոսն էր, ըստ Կոստանդին Ծիրանածինի (Վասն Թեմաց. Ա. 20 տպ. Bonn) Յուլիոս Կեսարն էր այս անուանափոխութիւնը կատարողը(1)։

Վերջապէս ո՞վ որ ալ եղած ըլլայ Կեսարիա անուանողը քաղաքը, այս կոչումը քաղաքին պէտք է տրուած ըլլայ, Հռոմէական տիրապետութեան շրջանին և անոնց կողմէ, մինչ քաղաքին հին անունը Մաժակ կամ Մազաքա կը շարունակուէր գործածուիլ մասնաւորապէս Յոյներէն, ինչպէս ցոյց կու տան յունական արձանագրութիւնները (տես CIG. 4442 «Հաւաքումն յունական արձանագրութեանց», համտ. Տաշեան ՀԱ. 1900, էջ 115)։

Անշուշտ աւելորդ է զբաղիլ Թուրք նոր պատմագրութեան այն յիմարաբանութիւններով որ Կեսարիա կոչումը թրքական կը համարէ (Քէմալէտտին 115) ամէն բան թրքացնելու մոլուցքով, ինչպէս նաև Խորենացիին՝ նոյնքան ազգայնականութեամբ յղացած այն առասպելով որով Կեսարիոյ հիմնարկութիւնը կը վերագրէ (Բ. դպ. ԺԸ. Գլ.) Տիգրանի քեռորդի Միհրդատ պատանիին որ ապստամբած է իբր թէ իրմէ և ապաստանած Կեսարի և անկէ ստացած Պէրգէ(2) քաղաքին իշխանութիւնը և գործակից օգնական դարձած է Հերովդէսի հօրը՝ Անդիպատրոսի։ «Սա շինէ, կ'ըսէ զՄաժաք ընդարձակագոյն եւ պայծառ շինուածովք, եւ անուանէ Կեսարիայ ի պատիւ Կեսարու»։

Թուրք պատմագիրը մոռցած է թէ աշխարհի զանազան մասե-

(1) Հ. Տաշեան (ՀԱ. 1900, էջ 115) կը յանձնարարէ տեսնել նաև Hist. bell Alex. 66. 4. Պլինիոս, nat. hist. 6. 8. Պտղոմէոս, 5. 6. 15. Ուղեւոր. Անտոնիոսի Iten. Ant. 197. 5. 201. 205. 210. 211. 214. Պեւտինգերեան ցուցակ, 10. 2. 3. Փիլոստրատոս, «Վարք Սոփեստաց Բ.», Not. epise, 1. 8. և ուրիշներ։

(2) Պէրգէ, արդի Գարա-Հիսարը, մայրաքաղաքն էր Պամփիւլիայի և նշանաւոր էր Տիանայի մեհեանով։



րուն մէջ կային 17 հատ Կեսարիաներ (տես Encyclopédie de l'Islam, 701) ամէնքն ալ Հռոմէական, որոնք իրարմէ կը զանազանուէին մասնաւոր կոչումով մը, այսպէս մերը կը կոչուէր Կեսարիա Կապադովկիացւոց (1) (Césarée de Cappadoce) մինչ միւսները կը կոչուէին Կեսարիա Անտիոքեան(2) (Césarée d'Antioche), Կեսարիա Պաղեստինացւոց(3) Césarée de Palestine), Կեսարիա Փիլիպպեան(4), Կեսարիա Անազարբեան(5) (Césarée d'Anazarba), Կեսարիա Բիւթանիական(6) (Césarée de Bithynie), Կեսարիա Փռիւգեան, Կեսարիա Պակեան(7) (Césarée de Bage), Կեսարիա Որոնդէսի վրայ, Նոր Կեսարիան ( = Նէոկեսարիա)(8), և այլ Կեսարիաներ ինչպէս Եդեսիոյ ենթակայ Տիարպէքիրի Սեւերեկ գաւառին մէջ Կեսարիա կոչուած գիւղը և այլ և այլ(9)։

Հ. Յակոբոս Տաշեան Հռոմէական Կեսարիոյ բուն տեղը եւս կը կարծէ թէ ճշդուած չէ (ՀԱ. 1932, էջ 171), սակայն շատերէն անոր տեղը կը կարծուի ըլլալ արդի Կեսարիայէն դէպ ի հարաւ-արեւմուտք մէկ ժամ հեռու, Արգէոսի լեռնային զանգուածին ստորոտն գտնուող բլուրներուն վրայ, որ տեղացիք Էսկիշէհիր կը կոչեն։ Հին Կեսարիա կամ Էսկի Գայսէրի կոչումով ալ ճանչցուած է և կը գտնուի աւելի մօտ Արգէոս լերան (Ֆրան. Համայնագիտարան, Arthur Guy և Vital Cuinet, Ա. հտ. էջ 309)։

Անիկա կը տարածուէր ըստ Տրդատ եպ. Պալեանի տեսութեան (Բիւզանդիոն, թ. 1071, 1900, Ապրիլ 20-3 Մայիս) Էսկիշէհիր ըսուած տեղէն մինչև Հէթէթիներու Նիյէքը։

Այս տարածութիւնը դէպ ի Արեւելք երկայնութեամբ մէկ, կամ մէկուկէս ժամ, դէպ ի հարաւ լայնութեամբ ալ մէկ ժամ միջոց մըն է։ Այս տարածութեան մէջ կը գտնուին Էսկիշէհիր, Կէտիկլէր, Գարանաէօրէն, Կէսերիս, Պէնէն, Սալար, Գյուրանարս, Ասարճըգ, Կիւլլէ, Պիլլօր, Հայմանա, Հէքիբլէր, Իրիճան և այլ Նիյէքները։

Ասոնք Էրճիյաս լերան ստորոտը կը համարուին, և կը գտնուին ձորերու, բլրակներու և տափարակ տեղերու վրայ։

Այս Նիյէքներէն, Էսկիշէհիր, Ասարճըգ և Հէքիբլէր նշանաւոր են, իրենց կրած հնութեան հետքերով, որոնց ամէն քայլափոխիդ կը հանդիպիս։ Հոն տեղերը գտնուած են 5–6 սենեակներ պարունակող այրեր, գերեզմաններ, տապանաքարեր, զուգէ հին կռատուններ,

(1) Դիտելի է որ Միխայէլ Ասորի, Կեսարիա Հայոց ալ կոչած է։

(2) Պեսիդոյ մէջ։

(3) Հիմա Գազա, նախապէս կը կոչուէր Ստրատոյի Աշտարակ զոր Հերովդէս Մեծ նորոգեց ու գեղազարդեց և անուանեց Կեսարիա, ի պատիւ Օգոստոս կայսեր։

(4) Լիբանանի ստորոտը, Կեսարիա կոչուած ի պատիւ Տիբեր կայսեր, Յորդանանի արեւմտեան աղբերակներուն մօտիկ, Դան (= Լայիս) քաղաքէն 3-4 մղոն դէպ ի Արեւելք։

(5) Անարզաբան (Կիլիկիոյ մէջ) կամ Դիոկեսարիան։

(6) Ողինպոսի մօտ։

(7) Հերմիւսի վրայ Լիդիա քաղաքը։

(8) Հին Կապիրան և այժմեայ Նիկսարը։

(9) Երկու Կեսարիա ալ Ափրիկեան աշխարհամասին մէջ կային, Césarienne Moritangas՝ հիմա Cherchell և միւսը՝ հիմա Tingis։

Ջուրի հին ճանապարհներ, կործանած շէնքեր, պարիսպներ և այլ, որոնք երբեմն դիպուածով մը երեւան կու գան, կամ հին այգին հերկելու, տեղը մաքրելու և այլ այսպիսի գործողութեան մը առեն (Տրդատ եպ. Պալեան, Նոյն)։

Հոն՝ Էսկի-Շէհիրի տեղւոյն մէկ կողմը՝ 1898ին պատահմամբ գտնըւեցան երեք գերեզմաններ քովէ քով, որոնց մէջէն ելած մարմարեայ կամ կճեայ վեց հատ ծաղկանկար տապանաքարեր՝ յունարէն արձանագրութեամբ։ Անոնցմէ մէկուն արձանագրութեան գիրերն եղծուած անընթեռնելի եղած են, միւս հինգինը որոշ կը կարդացուին։

Հայ-կաթոլիկ Գերապայծառը Պօղոս եպ. Էմմանուէլեան զանոնք առած էր և եկեղեցւոյն բակին մէկ կողմը ամփոփած (տես ՀԱ. 1899, էջ 16)։

Ասոնց պատճէնը հրատարակած ըլլալով Տրդատ եպ. Պալեան, զանոնք կ'արտագրենք հոս, անոնց կցելով թարգմանութիւնները։

I

ΑΥΡΗΛΙΟΣ ΓΟΡΔΙΑΝΟΣ
ΚΑΣΚΕΛΙΩ ΚΕΛΑΔΟΥ
ΠΑΤΡΙ ΚΑΙ ΛΟΝΓΕΙΝΗϹ
ΤΡΑΤΟΝΙΚΟΥ ΜΗΤΡΙ
ΤΟΙΣΓΛΥ ΚΥΤΑΟΙϹ
ΜΝΗΜΗϹ ΧΑΡΙΝ.

Avrillos Gordianos, ի յիշատակ իր հօրը Cascelio Keladouի եւ ի յիշատակ իր մօրը Longinis Tratonicouի որոնք իրեն սիրելի են:

II

ΑΗΔΩΝ ΛΕΩΝΙΔΑ ΛΕΩΝΙΔΟ
Υ ΤΩΑΝΔΡΙ ΜΝΗΜΗΣ ΕΝΕΚΑ.

Aidon Leonida ի յիշատակ իր ամուսնոյն Leonidoի:

III

Τ. ΦΑ. ΙΑϹΩΝ ΗΡΚΛΕΙΗΙ ΔΙΑ
ΓΥΝΑΚΙ ΤΗΓΛΥ ΚΥΤΑΤΗ
ΜΝΗΜΗΣ ΕΝΕΚΑ.
ΤΙ. ΦΛ. ΙΑΣΩΝ ΖΩΝ
ΚΑΙ ΦΡΟΝΩΝ ΕΑΥΤΩ.

T. Fl. Iassou ի յիշատակ իր սիրելի կնոջ Irkliiի:

IV

ΙΟΥΛΙΑ ΚΑΙ ϹΕΚΟΥΝΔΑ.
ΑΙΜΗΤΡ ΜΗΤΡΟΔΩΡΩ
ΜΝΗΜΗΣ ΕΝΕΚΑ.

Julie եւ Secounda ի յիշատակ իր մօրը Midrodora:

V

ΙΟΥΛΙΑ ΜΗΤΗΡ ΚΑΙ ΚΛΗΜΗϹ
ΑΔΕΛΦΟϹ ΑΥΓΟΥϹΤΑ ΛΩΛΟΓΟΥ
ΜΝΗΜΗΣ ΧΑΡΙΝ.

Մայրը Julié եւ հայր Klimis ի յիշատակ Augusta Zologouի:

Դժբախտաբար բոլոր այս տապանաքարերը անթուական ըլլալով, կարելի չէ ըսել թէ անոնք ո՞ր շրջանին կը պատկանին, միայն ցոյց կու տան թէ անոնք կամ Հռոմէական քաղաքին մէջ թաղուած էին, կամ աւելի հաւանականօրէն՝ Հռոմէական քաղաքին տեղը՝ Բիւզանդական շրջանին գերեզմանատան վերածուած էր և այս տապանաքարերը այդ շրջանէն էին։



Հոն կը տեսնուին դեռ հետքերը Հռոմէական Կրկէսի (Cirque) մը, բայց այնքան մասնական և հազիւ նշմարելի, որ պէտք է շատ ուշադիր ըլլալ, կարենալ զայն որոշելու համար (Vitai Cuinet, Ա. 309)։

1886ին այս տեղւոյն վրայ կատարուած պեղումներ երեւան հանեցին հիմերը հսկայ շինութեան մը, գերեզման-նկուղներով և յունարէն մահագրական արձանագրութիւններով և քանի մը հնութիւններով։

Հին պատերու մնացորդներ բազմաթիւ են։ Հոս հոն գտնուած են քարեր որոնք խառն խաչերու նշաններ կը կրեն։

Arthur Guy կը վկայէ նոյնիսկ թէ հոն կը մնան Ակրոբոլի (միջնաբերդ) աւերակները։

Ամրոցի մը կամ միջնաբերդի մը գոյութիւնը շատ հաւանական է, նկատի ունենալով 260ին Շապուհ Ա.ի (241–271) օրով կատարուած գրաւումի առթիւ (տես վերը, էջ 224–225) տրուած մանրամասնութիւն մը, որուն համաձայն քաղաքին հրամանատարութիւնը առած էր Դեմոսթենէս և կը վարէր անոր պաշտպանութեան գործը։ Բայց քաղաքին բժիշկներէն մին որ գերի բռնուած էր, չարչարանքներու սաստկութենէն տկարացաւ և ցոյց տուաւ պաշարող Պարսիկներուն պարիսպին տկար կէտը ուրկէ անոնք ներս մտան։ Դեմոսթենէս պաշարուած թշնամիներէն որոնք հրաման ունէին զայն ողջ բռնելու, ձիու վրայ սուրը ձեռքը, ճեղքեց պաշարող բանակը և յաջողեցաւ խոյս տալ (Զոնորաս, 234. Tillmont, Գ. 452. Asie Mineure, 441)։

Այս մանրամասնութիւնները կը հաստատեն թէ քաղաքը երբ պարսպապատ չէր, ապահովաբար գոնէ միջնաբերդ մը կամ Ակրոբոլ մը ունէր։

Քաղաքին ընծայուած կարեւորութիւնը և իբր մայրաքաղաք Կապադովկիոյ անոր տրուած նշանակութիւնը, հասկնալի է որ քաղաքը պէտք էր օժտած ըլլար նաև պարիսպով մը, որուն շինութեան յիշատակութիւնը չէ եղած։

Հռոմէական Կեսարիան, իր կարեւորութիւնը միշտ պահեց թէև իր դիրքը ելեւէջներու առարկայ եղաւ։

Կուսակալներու աստիճանը իսկ միշտ փոփոխական էր, կայսրներու քմահաճոյքէն կամ քաղաքական և զինուորական կացութենէն կախում ունէր։

Վեսպասիանոս բարբարոսներու առջև պատնէշ մը կանգնելու համար հոն լեգէոններ բանակեցուց, բայց եղաւ ժամանակ ալ որ պարզ Procuratorով մը, այսինքն տուրքերու գանձիչ պաշտօնեայով մը կառավարուեցաւ։

Իր կարեւորութեան մասին գաղափար մը տալու համար կը բաւէ ըսել թէ Զոնարաս (էջ 234) զայն երկրորդական քաղաք մը համարելով հանդերձ կ'ըսէ թէ 260ին ան ունէր 400.000ի չափ բնակիչ։

Հռոմէական կայսրութեան ներքև Կեսարիա մեծ կարեւորութիւն կ'ստանար Հռոմէական շահերու տեսակէտով, իբր Արևելքի փողերանոցներէն մին, երկրորդն ըլլալով Սուրիոյ Անտիոք քաղաքը։

«Տիբերիոսէն մինչեւ Կաղիգուլա գրեթէ 240 տարուան շրջան մը ամէն իշխող կայսեր դիմանկարներով դրամներ կոխուեցան Կեսարիոյ փողերանոցին մէջ, այսպէս կարելի է գտնել նոյն փողերանոցէն երեք դրամներ 180 կրամ, երկդրամներ 120 կրամ, դրամներ 60 կրամ, 1/2 դրամներ 30 կրամ ծանրու-

թեամբ: Մինչեւ Սեպտիմիոս Սեւերոս (193-211) այս դրամները մաքուր արծաթէ են: Անոր յաջորդներուն ժամանակ հետզհետէ արծաթին տեսակը կը վատթարանայ: Կան նաեւ նոյն փողերանոցին մէջ զարնուած մեծ-միջակ-փոքր պղնձադրամներ:

«Կապադովկեան դրամներու մեծ մասին վրայ կ'երեւի Արգէոս լեռը, երբեմն իր գագաթին վրայ աստղով մը, երբեմն արձանով մը, ուրիշ անգամներ մեհեանի մը կամ սիւներու վրայ կանգնած: Ուրիշ դրամներու վրայ Յունական Աստուածներ, ինչպէս Աթենաս, Հերակլէս եւայլն, նոյնպէս Ասիական Դիցուհիի գլուխ մը եւ Հռոմէական դրամներու զանազան խորհրդանշաններ:

«Եթէ դրամներու խորհրդանշանները մասնակի լոյս մը կը սփռեն, Կեսարիոյ դէպքերուն եւ կրօնական պաշտամունքներուն վրայ, արձանագրութիւնները, թուականները որ կայսրերու գահը բարձրանալէն կ'սկսին, շատ աւելի կարեւոր են» (*Գ. Բ. Օհաննեանի տեղեկութիւններ*)։

*Հոն հաւաքած դրամները (որոնցմէ նմոյշներ տրուած են, տես վերը, էջ 243 և 246) կրնան գաղափար մը տալ Կեսարիոյ փողերանոցին կատարելագործեալ վիճակին վրայ, իսկ անոնց շրջագիրներուն մի քանի բացատրութիւնները, ի վեր կը հանեն Հռոմէական շրջանին Կեսարիոյ քաղաքական կամ կրօնական նշանակութիւնը։*

*Այսպէս, Գ. Բարսեղ Օհաննեանէն հաղորդուած տեղեկութեան համաձայն Կեսարիոյ տրուած են հետեւեալ տիտղոսները։*

1. ΜΗΤΡΟΠΟΛΕΩΣ, *կեդրոնական քաղաք կամ նահանգային մայրաքաղաք։ Այս պատուանունը նախապէս կը տրուէր քաղաքի մը որուն բնակիչները երկրորդ քաղաք մը հիմնած էին։ Հռոմ որ այս տեսակ մանրամասնութիւններ նկատի չէր առներ այս պատուանունը տուաւ ըստ իր շահերուն միեւնոյն նահանգին մէկէ աւելի քաղաքներուն, միայն զանազանել տալով առաջին, երկրորդ, յորջորջումներով։*

2. ΝΕΩΚΟΡΟΥ (Neocore), *այս պատուանունը կը տրուէր այն քաղաքներուն կամ բնակչութեանց որոնք տաճարները աւլելու, մաքրելու, գանձը, սրբազան անօթները պահելու և տաճարին կալուածները մատակարարելու և սրբազան խաղերը կազմակերպելու առանձնաշնորհումը ունէին։ Կեսարիոյ մէջ այս խաղերէն երկուքը տեղի կ'ունենային։*

3. ΣΡΟΗΕΡΙΑ (Soverea) *ի պատիւ Սեպտիմիոս Սեւերոսի։*

4. ΦΙΛΑΔΕΛΦ (ΕΙΑ), ԵՂԲԱՅՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ. *ի պատիւ Սեւերոսի երկու զաւակներուն՝ Կարակալլայի և Կէթայի։*

5. ΥΠΑΤΟΣ (Consulat) *որ կայսեր հիւպատոսութեան տարին կը նշանակէր* ΥΠΑΤΟΣ Τ *պիտի նշանակէր Հռոմէական* COS III*ը։*

6. ΕΛΕΥΘ (ερία) ΔΥΜΙΟΥ *կամ Հռոմէական* Libertas Publica՝ *ժողովուրդին ազատութիւնը։*

7. EXERCITUS CAPPADOCIUS S. C., *որ կ'երեւի Անդրիանոսի մէկ մեծ պղնձադրամին վրայ, ի յիշատակ իր 124ին (Քր.է յետոյ) զինուորական ճամբորդութեան։*

*Ուրեմն Հռոմէական շրջանի կեսարական դրամները պատկառելի թիւ մը կը կազմէին որ նոր պեղումներով կրնար դեռ ստուարանալ և նոր լոյս սփռել Կապադովկեան պատմութեան վրայ։*

*Կեսարիա Հռոմէական շրջանին զերծ չմնաց աղէտներէ որոնք իր*



*գոյութեան կ'սպառնային սակայն անիկա բնաւ չկորսնցուց իր նշանակութիւնը։*

*Այսպէս Անտոնինոս Պիոս (138–161) կայսեր ատեն, սոսկալի երկրաշարժներ որոնք Փոքր Ասիոյ մէջ պատահեցան (տես վերը 243) մեծ վնաս հասցուցին նաեւ Կեսարիոյ։*

*Նոյնպէս սոսկալի երկրաշարժներ պատահած էին Կեսարիոյ Փիրմիլիանոս եպ. Կեսարացիի (233–269) իշխանութեան օրերուն, ինչպէս կը հասկցուի իրմէ հասած նամակէ մը, ուր կը հաստատէ թէ այդ երկրաշարժներուն հետեւանօք ամբողջ քաղաքներ երկրիս երեսէն անհետ եղած էին։*

*Այս երկրաշարժներու ընթացքին թերեւս Կեսարիա մեծապէս վնասուած է, սակայն կործանա՞ծ է անիկա, — այս մասին վաւերական տեղեկութիւն մը չունինք, թէեւ անոր կործանումը երկրաշարժէ մը առանց որոշ թուականի մը հաւաստողներ եղած են, ինչպէս* William Smith *որ կ'ըսէ թէ Հռոմէական Կեսարիան կործանած է երկրաշարժէ մը (տես* A Smaller Classical Dict.)։

*Միայն որոշ է թէ Փիրմիլիանոս եպիսկոպոսին իշխանութեան ժամանակամիջոցին, Քրիստոսի 260 թուականին Կեսարիա հիմնայատակ եղած է Շապուհ Ա. Սասանեան պարսիկ թագաւորէն, սակայն ինչպէս կը տեսնուի անիկա անմիջապէս վերաշինուած է, եթէ այդ հիմնայատակ կործանումը տառական իմաստով առնել պէտք ըլլայ, վասնզի բնակչութեան ջարդը որուն մանրամասնութիւնը կու տան պատմիչները անպատճառ կործանումի մը փաստը չէ։*

*Եթէ իրապէս կործանած է իսկ, անմիջապէս վերաշինուած է թերեւս աւելի ճոխ և աւելի փառաւոր, վասնզի անիկա Դիոկղետիանոսի ժամանակ (284ին) երբ Հռոմէական կայսրութեան Ասիական նահանգները վարչական նոր բաժանումներու ենթարկուեցան (տես վերը 227) Պոնտոսի մեծ թեմը ստորաբաժնուեցաւ 10 գաւառներու։*

*Ասոնցմէ* Առաջին Կապադովկիոյ(1) (Cappadocia prima) *գլխաւոր քաղաքն էր* Կեսարիա:

*Հետեւաբար 260ի կործանումէն յետոյ շինուած քաղաքը, խիստ շուտ զարգացում և այնքան մեծ կարեւորութիւն ստացած էր, իբր քրիստոնէական մեծ աթոռ մը, որ ո՛չ միայն իր գործունէութիւնը սահմանափակած էր իր անձուկ շրջանակին մէջ այլ նաեւ տարածած՝ իր ազդեցութիւնը հեռաւոր երկիրներու վրայ, հաւատածաւալական գործունէութեամբ և քարոզութիւններով, և տուած էր Եկեղեցիին մեծ դէմքեր և մատենագիրներ։ Կեսարիա այդ ժամանակաշրջանին կը հանդիսանար նաև կրթական օրրան մը իր բարձրագոյն դպրոցով որ մինչեւ Ե. դար իր հռչակը կը պահէր և մինչեւ արաբական արշաւանքը՝ թէև անշքացած, իր գոյութիւնը կը քաշքշէր։*

*Կեսարիոյ դէպի քրիստոնէութիւն ցոյց տուած մեծ հակումը և յարումը պատճառ եղաւ որ քաղաքին զարգացման բնական ընթացքը կասի կամ կասեցնելու փորձեր ըլլան՝ Քրիստոնէութեան հալածիչներուն կողմէ, որոնք ինչպէս տեսնուեցաւ, սաստիկ հալածանքներ գործադրեցին։*

---

(1) *Միւսներն էին Բ. Կապադովկիա, Ա. և Բ. Հայք, Ա. և Բ. Գաղատիա, Բիւթանիա, Պափլագոնիա, Հելլեսպոնտոս, Պոլեմոնեան Պոնտոս։*

Այս շրջանին է որ (տես վերը 257) Յուլիանոս Ուրացող (361-363) քաղաքը կը ջնջէ քաղաքներու ցուցակէն և կ'առնէ անոր Կեսարական անունը և անոր կու տայ իր հին անունը՝ Մազաքա, որ անիկա կը կրէր երբ միայն աւան մըն էր։

Սակայն այս անշքացման փորձը երկար չտեւեց։ Յուլիանոսի յաջորդը Վաղենտիանոս (364-375) երբ նոր բաժանումներու ենթարկեց Կապադովկիան, Կեսարիա մնաց մայրաքաղաք Առաջին Կիլիկիոյ (Հերակլէս, Տաշեան ՀԱ. 1900, էջ 115), և 385ին Թէոդոս վերահաստատեց անոր Կեսարիա անունը (Քէմալէսին, 112), երբ արդէն քաղաքը ստացած էր արտասովոր զարգացում՝ շնորհիւ իր հռչակաւոր և անուանի եպիսկոպոսին՝ Ս. Բարսեղի (371-379) որուն կը պարտէր Հռոմէական Կեսարիան իր հոյակապ եկեղեցիները, մեծ մասամբ ձեռակերտները Կապադովկեան Եկեղեցւոյ մեծ Հայրապետին։

Անիկա ո՛չ միայն իր օրով պատահած սովի մը ատեն աղէտեալներուն մեծ օգնութիւններ ըրաւ այլ շինեց նաև մարդասիրական հաստատութիւններ։ Այսպէս քաղաքէն դուրս շինել տուաւ մեծ աղքատանոց մը և հիւանդանոց մը(1) (տես վերը, էջ 263)։

Ան շինել տուաւ նաև իր Սրբարանը(2) նոյնպէս հաւանօրէն քաղաքէն դուրս (Բրօֆ. Ա. Կապրիէլ, Monuments Turcs d'Anatolie, Ա. հտ.)։

Այս շրջանին քաղաքը տարածուած է քիչ քիչ շուրջը այն շինութեանց որոնք Ս. Բարսեղ շինած էր (Encyclopédie de l'Islam, էջ 703)։

Այնպէս որ Հռոմէական Կեսարիոյ հին քաղաքին քով կամ անոր կից նոր քաղաք մը երեւան եկաւ, ինչպէս կը հաստատուի Գր. Նազիանզացիի (ճառ Ի.) մէկ բացորոշ վկայութեամբը։ Ան կ'ըսէ թէ «քաղաքին մօտ դուրս ելիր, եւ զարմացիր նոր քաղաքին վրայ, որ կոթող մըն է բարեպաշտութեան», անշուշտ իր հոյակապ եկեղեցիներով և աղքատանոցներով և հիւանդանոցներով, որոնք կառուցուած էին Ս. Բարսեղի ջանքերովը։

Այս ընդարձակուած քաղաքը որ կերպով մը կը քալէր կամ կ'առաջանար դէպի ստորոտը այն բլուրներուն որոնց վրայ կառուցուած էր Հռոմէական Կեսարիան, շատ հաւանական չէ որ ամրացուած քաղաք մը եղած ըլլայ, սակայն մեծ քաղաք մըն էր, մեծ իր քաղաքա-

(1) Այս հիւանդանոցին տեղը կ'ենթադրուի Տօրծօրակ (Թրքական հնչումով Ճիւրճիւրիկ) կոչուած թաղը՝ որ կը գտնուի ձորի մը մէջ։ Այս Ձորձորատին քովը բարձրադիր դիրք ունին Պաթթալ և յարակից Թէփէճիք (փոքրիկ բլուրի մը վրայ) թաղերը։ Տօրծօրակ թէև թրքաբնակ էր, բայց անոնց խօսած և հայերէնէ մնացած բառերով թուրքերէնը ցոյց կու տայ որ անոնք նախկին Հայեր եղած են և վերջէն իսլամացած։ Այդ թաղին կից Զախալըղ (այս բառն ալ թուրքերէնի չի նմանիր, այլ թերեւս յունարէնէն աղաւաղուած է) կոչուած թաղն ալ հայաբնակ էր (հմմտ. Ս. Փօղոսեան, Արեւ, թ. 4827)։

(2) Այս սրբարանը, Ս. Բարսեղի անուան նուիրուած մատուռը, կը կարծուի ըլլալ (Ս. Փօղոսեան, Արեւ, թ. 4828) Պաթթալ թաղին մօտ, դէպի հին Կեսարիա բարձրացող բլուրին կողին վրայ հաստատուած Ճրճըրգլըր մզկիթը որուն այս անունը կու տան յախճապակիէ ծածքին համար։



կան, մանաւանդ իր կրօնական նշանակութեամբ, իբր աթոռ Կապադովկեան մեծ Եկեղեցւոյն, որուն կարեւորութիւնը և ոյժը կը շեշտէր Ս. Բարսեղ իր անձնական արժանիքներովը և ձիրքերովը։ Այնպէս որ անոր ոյժը ժլատելու համար Վաղենտիանոս կայսրը փորձեց Կեսարիոյ աթոռը պառակտել Տիանայի մէջ եպիսկոպոսական աթոռ մը հաստատելով, ինչ որ պատճառ եղաւ որ Կեսարիոյ Ս. Բարսեղը և Տիանայի՝ Անթիմոս եպ.ը իրարու դէմ պայքար մղեն։ Սակայն Ս. Բարսեղ յաջողեցաւ իր աթոռին հեղինակութիւնը բարձր պահել, և Կեսարիա իբր նախապատիւ աթոռ չկորսնցուց իր բարձր նշանակութիւնը։

Իբր առեւտրական կեդրոն, իր բարգաւաճումն ալ չկասեցաւ Հռոմէական տիրապետութեան շրջանին։ Անիկա կը գտնուէր Հռոմէական մեծ ճամբուն վրայ, որ Գաղատիայէն կու գար, առանց անցնելու Ալիսի վրայէն այլ քերելով զայն քովիվեր, անցնելով Պառնասոսէն և Նիւսայէն։



ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ ՀԻՒՍԻՍԷՆ ԱՌՆՈՒԱԾ

Այս ճամբան ամէնէն կարճը չէր բայց ան կը խուսափէր երկու անգամ անցնելէ Ալիս գետը, որ ենթակայ է ձմեռնային մեծ հեղեղներու։ Որչափ ատեն որ Հռոմ մայրաքաղաք էր և ամբողջ կայսերական առեւտուրը կու գար և կ'երթար Հռոմ, Գաղատիոյ և Կեսարիոյ միջև յարաբերութիւնները կը կատարուէին գաւառական միջոցներով և բնակիչները հաւանաբար կը գործածէին կարճ ճամբան երբ բաց ըլլար և ձմեռը՝ Հռոմէական ճամբան (Ramsay. Asia Minor. 256)։

6. ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԵՍԱՐԻԱ.— Քաղաքը իր բարգաւաճման և փառքին մէջ էր երբ 395ին Հռոմէական կայսրութիւնը երկուքի բաժնուեցաւ, և Բիւզանդական կայսրութեան գլխաւոր քաղաքներէն

մէկը եղաւ Կեսարիան, որուն նոր մասը, այն որ Ս. Բարսեղի շինութեանց շուրջը առաջ եկած էր, հասաւ իր զարգացման։

Հռոմէական Կեսարիան իրենց վրայ կրող բլուրներուն ստորոտը շինուած այս նոր քաղաքին հաւանական տեղը կը ճշդէ Joanne ուղեցոյցը (guide) հետեւելով Ch. Texierի, մատնանշելով շրջանակաձեւ դաշտ մը, քիչ մը ցած մօտակայ դաշտերէն (Vital Cuinet Ա. 309)։

Տեղը այս քաղաքին, այսօր քիչ շատ որոշապէս կարելի է ճշդել, առնուազն երեք հին եկեղեցիներու տեղերովը, թէեւ անոր տարածութիւնը կարելի չէ որոշապէս գծել։ Այդ երեք եկեղեցիներէն մին որ կը գտնուի ամէնէն արեւմուտքը, յատկանշական ճարտարապետական ոճ մը ունի իր բոլորշի կողակով (Abside) որուն հիմերը փլատակներու միջեւ կը տեսնուին։

Այս եկեղեցին տեղացի Հայերը կը կոչեն Սուրբ Վասիլ։ Vital Cuinet (Նոյն Ա. 310) հետաքրքրական եզրակացութիւն մը կը հանէ Հայերու այս բացատրութենէն։ Անիկա կը խորհի թէ Հայերը պէտք է այդ վայրը կոչէին Սուրբ Բարսեղ քանի որ Վասիլ բառին համապատասխանն է Բարսեղ։

Հայերը թարգմանելով տեղին Այ-Վասիլ անուան առաջին մասը զոր կը հասկնային եւ անխախտ պահելով երկրորդը, հաւանօրէն առանց անդրադառնալու թէ անոր ալ համապատասխանը իրենց լեզուին մէջ ունին, փաստը հայթայթած կ'ըլլան թէ այս աւերակին անունը աւելի հին է քան Հայ արդի գաղութին հաստատութիւնը։ Vital Cuinet դժուարութիւն մը չի տեսնար, ընդունելու նոյնութիւնը այս աւերակին Ս. Բարսեղ Կեսարացիի անուան նուիրուած եկեղեցիին հետ, որ ապահովաբար Կեսարիա կառուցած պիտի ըլլար իր աթոռին վրայ բազմած հռչակաւոր հայրապետին եւ նշանաւոր Ս.ին անուանը։ Իր այս կարծիքը կը հիմնաւորէ նաեւ Յոյն-Կաթոլիկ քահանայի մը տեսութեան վրայ որ չորս տարի Կեսարիա բնակած է եւ ինքն ալ այս եզրակացութեան եկած։

Երկրորդը՝ մեր յիշատակած երեք եկեղեցիներէն կը գտնուի աւելի արեւելք, ընդմէջ Թուրք գիւղի մը եւ Թալասի ճամբուն։ Անիկա կատարելապէս յայտնաբերուեցաւ 1887ին կատարուած պեղումներով, որոնք որոշ ցոյց կուտային եկեղեցիին ձեւը եւ կերպարանքը։ Անիկա ալ առաջինին նման, ունէր բոլորշի կողակ մը։

Դժբախտաբար Թուրքերը վերցուցած են մինչեւ ամենայետին բեկորները այս պատմական յիշատակարանին, գործածելու համար շինութեանը Կեսարիոյ մէջ կառուցուած պետական ընդարձակ դպրոցի մը։

Քարերու այս տեղափոխութեան ընթացքին, որ պեղումի մը հանգամանքը կ'առնէր, մինչ իրականին մէջ յիշատակարանի մը քանդումն էր, գտնուած են անոյշ ջուրի հոր մը — ինչ որ բաւական հազուագիւտ է այդ շրջանակին մէջ—, քանի մը անարժէք առարկաներ, եւ միակ քանդակ մը, որ կ'ըսուի թէ կը ներկայացնէր եպիսկոպոսական գաւազան մը, որ Թուրքերը բրիչի հարուածով մը քանդած են ըստ Vital Cuinetի։

Փոքր Ասիոյ այս Ֆրանսացի աշխարհագիրը, անվարան այս եկեղեցին կը նոյնացնէ Սուրբ Մամասի եկեղեցւոյն հետ որ Յուլիանոս Ուրացողի (361-363) ժամանակ կառուցուած էր, վասնզի հրաշքները որ ժողովրդային աւանդութիւններ կը պատմեն այս եկեղեցիին



շինութեան առթիւ, թէեւ կը տարբերին անոնցմէ որոնք կը տեսնուին Սուրբ Մամասի եկեղեցիին գրոյցին մէջ, սակայն կը ներկայացնեն շատ մըն ալ նմանութիւններ,

Երրորդ եկեղեցին կը գտնուէր երկու առաջիններուն միջեւ, արդի քաղաքին հարաւակողմը, դաշտին (Եազը) վրայ, եւ կը թուի թէ ունէր բազմանկիւն կողակ մը եւ երեք կոնք (տաճան=nef)։

Անիկա Ս. Կոյսին անուան նուիրուած էր։ Յոյները մինչեւ վերջը կը կոչէին զայն Այիոս Բանանիա, իսկ Հայերը՝ Տիրա ժամ (=դուրսի եկեղեցի)։ Vital Cuinet կը հետեւցնէ թէ անիկա պիտի ըլլայ ան եկեղեցին ուր Ս. Բարսեղ Հայրապետ ձեռնադրուեցաւ եւ ան ուր պատահեցաւ Ս. Եփրեմին։

Քրիստոնէից գերեզմանատան ճամբուն վրայ եւ քաղաքին հարաւային ծայրը գտնուած Յունական այս եկեղեցիին միայն խորանին մնացորդը կը տեսնուէր վեց ոտք բարձրութեամբ։ Այս բեկորներուն շուրջը պեղումներ կատարուած են Հայերու կողմէ եւ գտնուած են 5-6 մեծ կարասներ եւ եկեղեցական անօթներ, որոնք փոխադրուած են Ս. Լուսաւորիչ եկեղեցին (Եղիսզարեան):

Այս եկեղեցւոյն սնարին (Chevet) կողմը, գոյութիւն ունի մեծ քար մը սեւ լաւայէ կամ տօռախ ժայռ մը, մէջտեղէն ճեղքուած։

Տեղացիք զայն կը կոչեն Հանգիս քաշը։ Սովորութիւն եղած է մեռեալները գերեզման տանելէ առաջ այդ քարին վրայ հանգչեցնել հինգ վայրկեան եւ յետոյ անցնել զայն դուռի խրտուիլակէն որ քանի մը քայլ անդին տնկուած է, եւ թաղել։

Vital Cuinet կ'ըսէ թէ այս քարին վրայ դնելով ննջեցեալները կը կատարեն յուղարկաւորութեան պաշտամունքները, վասնզի Հայերը եւ Յոյները մեռեալները միշտ եկեղեցի չեն տանիր թաղումէն առաջ։ Անիկա կ'ըսէ թէ այս արարողութենէն յետոյ երբ յուղարկաւորութեան թափորը ճամբայ ելլալու վրայ կ'ըլլայ սովորութիւն է որ ամէնէն մօտիկ ազգականը հանգուցեալին մարմինին վրայ նետուի եւ կարծել տայ թէ կ'ուզէ արգիլել անոր աւելի հեռուն տարուիլը։ Ականատես վկայ մը, թէպէտեւ կանխաւ պատրաստուած եւ բաւական թերահաւատ այս տեսակ ցոյցերու, հաղորդած է Vital Cuinetի թէ այս տեսարանը որ անցեալին անդրադարձումն է, սաստիկ տպաւորած է զինքը։

Նոյնպէս Vital Cuinet կ'ըսէ թէ այս քարին շուրջ վէճ մը ծագած է Յունաց եւ Հայոց մէջ որոնք կը յաւակնէին — մէկը եւ միւսը — անոր վրայ ունենալ այլամերժ իրաւունք մը սեփականութեան։

Խնդիրը տեղական իշխանութեան առջեւ կ'երթայ, դատարանը, կ'ըսուի, սաստիկ դժուարութեան մէջ էր խնդիրը վճռելու համար, երբ առտու մը քարը գտնուեցաւ բաժնուած գրեթէ հաւասար երկու մասերու, այնպէս ալ կը գտնուի հիմա, ինչ որ թոյլ տուաւ կառավարութեան լուծել խնդիրը բարեկամաբար, յատկացնելով խնդրոյ առարկայ քարի իւրաքանչիւր մասը երկու հասարակութեանց։

Ըստ V. Cuinetի քառորդ մը եւ ըստ Հ. Ինճիճեանի նետընկեց մը հեռու քաղաքէն, դէպի արեւելք, Դազիլեր լիճին մօտ, կը հանդիպինք գերեզմանական քարերու միջեւ, որոնք կը թուին շատ հին, վաղեմի շինութեանց աւերակներու որոնք հին Ս. Մերկերիոս յունական վանքին վերաբերեալ կը կարծուին։

Այս վանքէն կը մնայ միայն կիսաւեր մատուռ մը ուր Հայ և Յոյն կեսարացիներ ուխտի կ'երթային տարին անգամ մը և խնջոյքներ կը կատարէին։

Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, շատ շահեկան և հայկական տեսակէտով խիստ շահագրգռական, տեղեկութիւն մը կու տայ, որ կ'արժէ հոս արձանագրել։

Անիկա Ս. Մերկերիոսի քայքայեալ եկեղեցիին քով կը դնէ «այլ եկեղեցի ամայի, որ ռամկօրէն կոչի **Հանգեղիցի** այսինքն **Հանգուցեալ եկեղեցի»** (Աշխարհ. Ա. մաս. Ա. հտ. 313-314)։

Քրիստոնէութեան առաջին տարիներէն մնացած բեկոր մըն է այս վանքը, ուր Ս. Բարսեղ ըրած է Յուլիանոս Ուրացողի մահուան գուշակութիւնը։

Դէպի հարաւ, 20 վայրկեան հեռուն դաշտին մէջ, կը տեսնուի պատի մը մնացորդը որուն վրայ բացուած է յառաջակառկառ (Ogive =Ջլան) պատուհան մը, որուն համար կ'ըսուի թէ «ճենովական» (ճինիվիզ) աւերակ մըն է։ Vital Cuinet այս կոչումը կը կարծէ թէ տրուած է «խաչակիրներուն», բոլոր Անատոլուի այն մասերուն մէջ որոնցմէ անցած են անոնք։

Այս աւերակին մօտ, կայ խոռոչ մը ձեւացնող պզտիկ անձաւ մը կամ քարայր մը, որուն մօտ կը համրուին աւելի քան 60 խորաքանդակ խաչեր ժայռի մը վրայ։

Այս տեղը որ կը գտնուէր Զըրզորթէն 1–2 մղոն հեռու լերան կողքը, կը կոչուի Գըրգլար կամ Գըրգ Գըրգլար, թերեւս ակնարկութեամբ մեծ թուով այն խաչերուն որոնք ճշդիւ հաշուել դժուար է։ Անոնք զանազան ձեւեր ունին, կան երկու կամ երեք բազուկներով, Լորէնեանի նման և խարիսխներու վրայ դրուած խաչեր։

Ամէն դաւանանքէ քրիստոնեայք սովորութիւն ունէին խմբով երթալ այդ քարայրը Զատկէն երեք կիրակի առաջ, այն օրը ուր կը տօնուի Սեբաստիոյ Քառասուն Մանկանց տօնը։ Կը կարծուի թէ ասիկա վայրն էր «Քառասուն Մանկանց» վանքին որ Ս. Բարսեղ կառուցած էր Կեսարիոյ շրջականներուն մէջ (V. Cuinet և Եղիազարեան)։

Եղիազարեան Բիւզանդական քաղաքին տեղւոյն մօտ և այսօր Էսկիշէհիր կոչուած բլուրներու կողքին չորս մենաստաններու մնացորդները կը կարծէ թէ ըլլան։

1. Ծըննըրգլը մզկիթը (որուն աւերակներէն կտորուանք միայն կը մնան) որուն համար ոմանք կը կարծեն թէ Ս. Բարսեղի անուան նուիրուած եկեղեցին էր։

2. Մանսավանք, որ ոմանք հայկական վանք մը կը կարծէին, սակայն Եղիազարեան կը մեկնաբանէ Մօնբէ վանք այսինքն Տաղ վանք (լեռնավանք) և կը հեռացնէ հայկական ըլլալու հանգամանքը։

3, Զըրզորթ, որուն քրիստոնէական յիշատակարան մը ըլլալը արդէն տեսանք թէ որքան կասկածելի էր։

4. Գըրգլար, որուն Բիւզանդական եկեղեցի մը ըլլալը աւելի հաւանական է, ինչպէս տեսնուեցաւ։

Այս երեք սրբատեղիներէն զատ Ծընճըգլըի քով դէպի հիւսիս բերդ մը կայ որ Բիւզանդական զօրանոց կ'անուանէին (Եղիազարեան)։

Ս. Պօղոսեան (Արեւ, թ. 4827) Ծըննըրգլըի քովը կը գտնուէին կ'ըսէ աւերակները Հռոմէական (?) պալատի մը որուն կամարները մինչեւ



վերջին տարիներս կանգուն կը մնային շուրջի քարակոյտերուն վրայ։ Ե. Երկաթեան (Բիւզանդիոն, թ. 1084. 1900, Մայիս 16) թերեւս այս Բիւզանդական զօրանոց կամ պալատ ենթադրուած շէնքին ակնարկելով է որ կ'ըսէ թէ «'Ի Ծըննըրխլը բարձր պատերով կը կանգնի ՀԱՄԱՄ ԳԱՑԱ քարուկիր շէնք մը, պատկառանք ազդող մնացորդներով, շէ՞նք մը՝ անտարակոյս քանի մը հազար տարիներ ողջունած և հեռու բաղնիք մը ըլլալէ՝ ինչպէս կը յորջորջէ ժողովուրդն՝ անոր բարձրերը տեսնուած խողովակ-փողրակները՝ շէնքին այս ու այն կողմը գալարուած, կրնայ պատշաճիլ սատուածոց բնակավայրի մը»։

Նշանակելի է որ Պէշ-թէփէի ստորոտը կամ շուրջը շինուած այս քաղաքը որ կայանն էր Բիւզանդական բանակի մը, իր կարգին կը ներկայացնէր նոր քաղաք մը տարբեր Էսկի-շէհիր կոչուած բլուրին վրայ կառուցուած Հռոմէական կեսարիայէն և անկէ որ հիմա գոյութիւն ունի։

Ասոր իբր փաստ Vital Cuinet կ'ըսէ թէ յոյն աւերակ եկեղեցիները որոնց վրայ խօսեցանք վերը, ամէնքն ալ կը գտնուին պարիսպէն դուրս և բախտաւորաբար շատ հեռու են արդի քաղաքէն, այնչափ որչափ հեռու են Հռոմէական կրկէսին մնացորդներուն տեղէն։

Նոյնպէս նշանակելի է որ արդի քաղաքին մէջ չի տեսնուիր ոեւէ յունարէն արձանագրութիւն մինչդեռ բազմաթիւ արաբ-պարսիկ տառերով արձանագրութիւններ կ'երեւան արդի քաղաքին պարիսպներուն վրայ։

Բիւզանդական քաղաքը, V. Cuinetի կողմէ ճշդուած վայրին մէջ, շրջապատուած էր բոլորովին արդի քաղաքին հետ ոչ մէկ առընչութիւն ունեցող պարիսպով մը, որուն հետքերը կը մնային, վասնզի Cuinet կ'ըսէ թէ հոն կը տեսնուէին քանի մը Բիւզանդական պարիսպներու մասերը կամ պաշտպանութեան երկար պատի մը աւերակները, և երկու աշտարակներու մնացորդները։ Այս բեկորները ապահովաբար կը պատկանէին ամրութեանց շարքի մը որ կը պսակէին հինգ բլրակները (այսօր Պէշ-Թէփէ կոչուած) ուր ըստ հնախոյզ գիտուններու կը գտնուէր քաղաքին միջնաբերդը՝ Ակրոպոլիսը։

Այս պարիսպները և բերդերը հաւանօրէն զանազան ժամանակներու մէջ շինուած են։

Հռոմէական կայսրութեան բաժանումէն (395) անմիջապէս յետոյ երբ բարբարոսներու արշաւանքին հետեւանօք Արեւելեան կայսրութեան սահմանները, Տիգրիսէն Եփրատ և ի վերջոյ Տաւրոսեան լեռնաշղթան կծկուեցան, Կեսարիոյ ամրացումը անհրաժեշտութիւն մը դարձաւ։

Հոնաց առաջին արշաւանքէն յետոյ Արկատիոս կայսրը (395–408) օրէնքով մը կը հարկադրէ բոլոր քաղաքները պարիսպներ շինել։ Անաստաս կայսրը (491-518) նոյնպէս հրամայած էր քաղաքները ամրացնել։

Յաջորդող արշաւանքները պատճառ եղան որ Բիւզանդիոն ամէն ջանք ի գործ դնէ ամրացնելու համար Կապադովկիան, որպէսզի կարելի ըլլայ Փոքր Ասիան փրկել ոտնակոխ ըլլալու վտանգէն։

Այս առթիւ հաւանօրէն շինուած են նաև Կեսարիոյ շուրջը ամրութիւններ, վասնզի Պրոկոպիոս երբ Յուստինիանոսի պարիսպները շինելուն վրայ կը խօսի աւելի հին պարիսպներու խօսքը կ'ընէ։

Յուստինիանոս կայսրը (527–565) որ յաճախ Կապադովկիա գտնուած էր, ոեւէ կայսրէ մը աւելի խնամք ցոյց տուաւ բերդեր կառուցանելու, շինեց Կեսարիոյ պարիսպները ըստ Zimmererի (ՀԱ. 1900, էջ 115 և 212, Նաեւ վերը, էջ 301) հին քաղաքին (արդի Էսկի Շէհիր Կեսարիոյ) ներքև տարածուող դաշտին վրայ։

Յուստինիանոս ինչպէս կը թուի խիստ ընդարձակ և պաշտպանութիւնը դժուար բերդի մը շրջագիծը սեղմած և աւելի պզտիկ՝ սակայն քաղաքը աւելի ազդու կերպով պաշտպանելու կարող նոր բերդ մը շինած է։ Ըստ Պրոկոպիոսի (Յաղագս Շինուածոց, Ե. 4–7) «առջի պարիսպները իրարմէ հեռու բլուրները կը շրջապատէին... պատնէշներ ... արօտներ, ... քաղաքին տուները զայն չէին կրցած լեցնել»:

Այս պարիսպներուն մնացորդները ըլլալ կը թուին անոնք որ V. Guinet տեսած է Եազըի մէջ, մինչ Բրոֆ. Կապրիէլ չէ տեսած, թերեւս Թուրքերուն անհաճոյ բան մը չըսելու նախահոգութեամբ, մինչ Քէմալէտտին (տես 50) հակառակ իր ազգայնականութեան անոնց գոյութիւնը կ'ընդունի։

Կեսարիոյ, ինչպէս ուրիշ քաղաքներու ամրացումը, սակայն բաւական չեղաւ վտանգը անհետացնելու, վասնզի ինչպէս տեսնուեցաւ (վերը 301–2) Կապադովկիա և Փոքր Ասիա ոտնակոխ եղան քանիցս։

610ին Պարսիկները կը գրաւեն Կեսարիան, վասնզի անկարող և ապիկար Բիւզանդացի հրամանատարը Crispus ոեւէ դիմադրութիւն չի փորձեր (տես վերը 302)։ Այս անկման մէջ դեր մը կատարած են ըստ Սեբէոսի (էջ 78) քաղաքին Հրեայ բնակիչները որոնք Պարսից կողմը անցած են։

Պարսիկները կը բռնեն, անշուշտ յունական ծառայութեան մէջ գտնուող, Վասակ Արծրունին «զորդի Սահակ Նահապետին Արծրունեաց, եւ սպանին զնա հանդէպ դրանն քաղաքին ի վերայ փայտի, որ թէպէտ եւ բազում աւճիռս վնասուց գործեալ էր նորա ի զաւրուն Պարսից, սակայն ամեն այն զաւրն Պարսից ողբայր զնա վասն քաջութեան եւ արիութեան» վասնզի ինչպէս Սեբէոսի (էջ 78) գրածէն կը հասկցուի «էր մանուկ ուժեղ եւ բարձրահասակ, մանաւանդ զի սնեալ եւս էր ի մէջ նոցա (Պարսից) եւ վարժեալ եւս ի նոցանէն հրահանգաւ»:

Քիչ յետոյ պարսկական արշաւներուն կը յաջորդեն արաբականները, որոնց հարուածներուն առարկայ կ'ըլլայ Կեսարիա, որ կ'առնուի կը տրուի քանիցս անգամ (տես վերը, էջ 303–305)։

Կեսարացիք աւանդութեամբ ցոյց կու տան ուղեգիծը որով Արաբները իբր թէ եկած են իրենց քաղաքին վրայ։ Այս աւանդութեան համաձայն անոնք երեք ուղղութեամբ կատարած են իրենց յարձակումը։ Նախ՝ Գըզըլ Էօրէն գիւղէն և Հաճըլար Քէօյի մօտը՝ Արգէոս լերան կողքէն կտրած են լեռնաքաղաքին ջուրերը, յետոյ Արապլար Կէտիկի կոչուած նեղ անցքէն անցնելով Պէշ-Թէփէլէր բարձունքները գրաւած են և յետոյ Էսկիշէհիրի դիրքերը (Եղիազարեան):

Աւանդութիւնը՝ որուն կը համաձայնի նաև պատմութիւնը, կ'ըսէ թէ Արաբները բնակչութեան մեծ մասը սուրէ անցուցած են և մաս մըն ալ՝ իսլամացուցած։

Արաբները գրաւած են նաև Պօղազ Քէօփրիւյի կամ Ինճէ-Սուի Բոյն գիւղերը և արշաւած՝ դէպ ի Էրքիլէթի բերդերը։ Անոնք յաջողած են վերջապէս դաշտին վրայ գտնուած և ջուրով շրջապատուած



գալէները (ամրոցները) անձնատուութեան հարկադրել և անոնց մէջ գտնուող բերդականները սուրէ անցնել և մէկ մասը իսլամացնել (Եղիազարեան), սակայն իրենց իշխանութիւնը երբեք տեւական չէ եղած և մի քանի անգամ քաղաքը Բիւզանդացւոց դարձնելու հարկադրուած են։ Կեսարիա, այսպէս կը դառնայ Արաբ-Բիւզանդական զօտեմարտութեան շրջանին զինուորական գործողութեան թատերավայր մը և Ժ. դարուն՝ կեդրոնը Քարսիանոնի բանակաթեմին, սակայն Արաբները որոնք հետզհետէ կը զօրանային, ի վերջոյ Կեսարիան կը գրաւեն և իրենց իշխանութեան տակ կը պահեն մինչև Ժ. դարուն վերջերը։

Այս շրջանին Արաբները՝ քաղաքը պաշտպանելու համար շուրջը պէտք է ամրոցներ կառուցած ըլլան։

Եղիազարեան կ'ըսէ թէ «քաղաքը հարաւէն ու արեւմուտքէն հովանաւորող լեռներուն կողքին կ'երեւին ամրոցներու աւերակներ: Քաղաքին արեւմտեան կողմը, մօտ հինգ փարսախ հեռուն, Եըլանլը կոչուած սեպաձեւ լերան կողքին հաստատուած էր բերդ մը որ հիմա կ'ըսուի Ջէնճիր գալէ։ Ան կը հսկէր Արեւմուտքէն քաղաքին սպառնացող յարձակումի՝ դաշտային ճամբուն վրայ: Իսկ Պէշ Թէփէլէր կոչուած բլուրի կողքին հաստատուած եւ այսօր Ճինիլիզ գալէ անունով ծանօթ բերդը կը հսկէր այն լեռնային անցքին վրայ որ սեղմուած է Եըլանլը լերան եւ Արգէոսի արեւմտեան սարերուն միջեւ:

Թէ՛ այս երկու ամրոցները եւ թէ՛ քաղաքը հիւսիսէն շրջապատող բլուրներու վրայ երեւցած բաղդատաբար նուազ անառիկ ամրոցները՝ նպատակ ունէին քաղաքը պաշտպանել միշտ արեւմուտքէն կատարուած յաճախակի արշաւանքներու դէմ. քաղաքին արեւելեան ճամբաներուն վրայ ընդհակառակն ոեւէ ամրութեան հետք չերեւիր, ինչ որ ցոյց կու տայ թէ գէթ այն ժամանակներն երբ վերոյիշեալ բերդերը կը կառուցուէին՝ արեւելքէն յարձակումի վախ չի կար»:

Եթէ ճիշդ է այս տեսութիւնը այդ շրջանը միայն արաբական տիրապետութեան ժամանակամիջոցն է, վասնզի Արեւմուտքէն Բիւզանդացիք միշտ հետամուտ էին յարձակելու և իրենց կորուսած երկիրները վերագրաւելու։

Կեսարիա երբեք ուրիշ ոեւէ ատեն Արեւմուտքէն եկող յարձակումի մը առարկայ եղած չէ բացի Դանիշմանդեանց շրջանին կարճ միջոց մը երբ Խաչակիրներ մինչև Կապադովկիա առաջացան։

Հետեւաբար, Եղիազարեանի այս կարծիքին մասին վերապահում ունենալով հանդերձ բոլորովին ժխտել չեմ կարող, տրուած ըլլալով որ անկարելի չէ որ Արաբները քաղաքին գրաւումը մշտնջենաւորելու համար այս ամրութիւնները կառուցած ըլլան։ Սակայն նոյնքան ալ հաւանական է որ այս բերդերը Դանիշմանդները կառուցած ըլլան, Խաչակիրներուն դէմ։

Անոնք աւելի կանուխ Պարսիկներէն ալ կառուցուած կրնան ենթադրուիլ, սակայն աւելի նուազ հաւանական կը թուի։

Եղիազարեան Արաբներու կողմէ կառուցուած ըլլալու իր վարկածին ուժ տալու համար կը հաւաստէ թէ «արաբական տիրապետութիւնը, ինչպէս նաեւ հին քրիստոնէութիւնը թողած են իրենց դրոշմը կարգ մը կիսաւեր յիշատակարաններու վրայ» և անմիջապէս կը յարէ թէ արաբական շրջանէն «կը մնան քանի մը յաղթութեան կամարներ յիշեցնող կոթողներ արաբական ծաղկենկարներով քանդակազարդուած, բայց հայկական ճարտարապետութիւնը յիշեցնող ոճով»:

*Եթէ արդարեւ գոյութիւն ունին այսպիսի յիշատակարաններ, այն ատեն մեծապէս կը զօրանայ այն ենթադրութիւնը թէ քաղաքը արեւմուտքէն կատարուած յարձակումի մը դէմ պաշտպանելու համար կառուցուած այդ ամրոցները, Արաբները կանգնած են։ Զարմանալի է սակայն որ նոյնիսկ իսլամական շահագրգռութեամբ մը քաղաքը ուսումնասիրողներ (օրինակ՝* Encyclopédie de l'Islam) *կ'անգիտանան ինչ որ Եղիազարեան կը մատնանշէ։*

*Արաբ աշխարհագիրները քաղաքին յիշատակարաններուն մէջ կը նշանակեն մզկիթ մը որ կառուցուած էր հաւատոյ մարտիկին և Թուրք ազգային հերոսին Սէյիտ Պաթթալ Ղազիի յիշատակին, որ այսօր իսլամական ուխտավայր մըն է, վասնզի ամէն անգամ որ իսլամ ուխտաւորներ, իսլամական սրբատեղիներ իրենց ուխտը կատարելէ յետոյ իբր Հաճի կամ Քէպաճը կը դառնան, երբ Ճընճըգլը կը հասնին, հանդիսաւոր ընդունելութեան մը կ'արժանանան, և հոն Պաթթալ Ղազիի հոգւոյն համար աղօթքներ կ'ընեն և յարգանք կը մատուցանեն անոր յիշատակին, անշուշտ ի նշան երախտագիտութեան, մասնակցութեամբ մոլլաներու, սօֆտաներու, պայրագտարներու, խումբով ձիաւորներու։*

*Արաբ աշխարհագիրները կը յիշեն նաև գամբարանը խիստ յարգըւած Մուհամմէտ Պին-Ալ-Հանաֆիյայի որ այս քաղաքը կը գտնուի* (Encyclopédie de l'Islam)։

*Ասկէ դուրս ուրիշ յիշատակարաններու խօսքը չեն ըներ, թերեւս այնքան մօտէն զբաղած չըլլալով։*

*Արաբական տիրապետութիւնը՝ հակառակ տեւական եղած չըլլալուն, ինչպէս կ'երեւայ, բոլորովին անհետեւանք չէ մնացած քաղաքին վրայ։*

*Եղիազարեան կը կարծէ թէ Արաբներու ազդեցութիւնը կրած են Կեսարիոյ և շրջակայից բնակիչները մասնաւորապէս իրենց հագուստ կապուստին և լեզուին վրայ։ Իր տեսութեամբ արաբական են փաթթոցը և կանանչ մէշլաք և դեղին հողաթափ և կապոյտ մոյկ* (ճիզմէ) *հագնելու սովորութիւնները, որոնք մինչև վերջերը պահուած էին Կեսարիոյ գոնէ իսլամ բնակչութեան մէջ, թէև այդ արաբական բարքերը կրնային Դանիշմանդներու, Սելջուկեանց, Գարաման-օղլուներու և վերջապէս Օսմանցի Թուրքերու միջոցաւ ալ ներմուծուած ըլլալ, իմ տեսութեամբս, աւելի հաւանականութեամբ, քանի որ այս Թուրք ցեղերը իրենց իսլամ կրօնքին բերմամբ շատ բան ընդօրինակած էին արաբական սովորութիւններէն, մանաւանդ լեզուէն։*

*Բիւզանդական շրջանին սկիզբները Կեսարիա պահեց իր կրօնական ու մտաւորական կեդրոնի հանգամանքը որ սակայն շրջանին վերջերը մատնուեցաւ անշքացման (տես վերը,* 324–331) *և այս տեսակէտով անիկա կորսնցուց իր նշանակութիւնը, սակայն ասոր փոխարէն անիկա դարձաւ զինուորական կեդրոնավայր մը, որ այլապէս նպաստեց քաղաքին բարգաւաճման։*

*Կեսարիոյ զինուորական կարեւորութեան ապացոյցը կու տայ Կոստանդին Ծիրանածին, կայսր մատենագիրը* (*տես* Արարողութիւնք, 444–445) *որ Վասիլ Ա. կայսեր* (867–880) *իշխանութեան շրջանին եղած պատերազմական կարգադրութեանց մասին կը խօսի և այս առթիւ*



*կը գրէ նաև կայսերական պողոտաներու և զինուորական կայաններու վրայ։ Ահա իր բառերը.*

«Համառօտ տեսութիւն կայսերական պողոտաներու եւ ցանկ զինուորական կայաններու:

Ա.
1. Կայան՝ Մալագինա(1)
2. » Դորիլէոն(2)
3. » Կաբուկիոն(3)
4. » Կողոնիա(4)
5. » Կեսարիա

[Բ. 6. » Դասիմոն Հայկական բանակաթեմին մէջ]:

Գիտնալու է որ, արքունեաց անձնապահապետն ու ասիական անձնապահաց հրամանատարը՝ կայսրը Մալակինա պիտի դիմաւորեն, իսկ Թրակեսեանին հրամանատարը՝ Դորիլէոն: Արեւելեան բանակաթեմին եւ Սելեւկիային հրամանատարները՝ կայսրը Կապորկիոն պիտի դիմաւորեն:

Արդ եթէ չուն դէպի Տարսոն ըլլայ, մնացած գումարտակները Կոպորկիոն պիտի համախմբուին. ընդ հակառակն, արեւելեան՝ Կապադովկիա, Քարսիանոն եւ Բուկեղարիոն բանակաթեմերու զօրավարները, Կողոնիա, իսկ Հայկական, Պափլագոնիա ու Սեբաստիա թեմերու հրամանատարները՝ Կեսարիա կայսրը պիտի դիմաւորեն:

[Եթէ արշաւանքը դէպ ի Տիվրիկ ըլլայ, հայազունդ գումարտակը Բաթիւս Հռիւակս պէտք է որ խմբուի]:

*Հետեւաբար Կոստանդինի տուած տեղեկութիւններուն համաձայն, երբ Բիւզանդացի կայսրեր Արաբներու դէմ արշաւէին կ'անցնէին հինգ կայաններէ որոնց վերջինը և գլխաւոր համախմբման վայրը՝ Կեսարիան էր։*

*Հոն կը համախմբուէին Պափլագոնացի, Հայ և Սեբաստացի (այս վերջինը Վասիլ Ա.ի ժամանակ Հայկականէն անջատուած էր) գումարտակները (Դելցեր,* Սկզբնաւորութիւն Բիւզանդական Բանակաթեմի, 64):

---

(1) *Ոպտիմատոն երկրին մէջ է։ Հոս մայրաքաղաքին և ասիական ձիաւոր թիկնապահներու պետերը կայսրը կը դիմաւորէին։*

(2) *Դորիւղէոն կը վերաբերէր Ոփսիկիոնի։ Ըստ Ռամսէյի Ոփսիկեցւոց հրամանատարը հոս կը միանար կայսեր, սակայն Հ. Դելցեր կը կասկածի թէ ճիշդ ըլլայ այս տեսութիւնը վասնզի Նիկիա, Ոփսիկիոնի հրամանատարին նստոցը, շատ աւելի մօտ էր Մալագինայի։ Ասկէ զատ աւելի յարմար էր որ բոլոր անձնապահները միեւնոյն ժամանակ կայսրը դիմաւորէին* (Սկզբն. Բիւզանդական Բանակաթեմին, 65)։ *Զօրս օրուան ձիավարութենէ յետոյ հոս կը հասնէր կայսերական բանակը (Իպն Խորտադբէ,* 82)։ *Ըստ Ռամսէյի ենթադրութեան, Թրակեսեան գումարտակին զօրավարը հոս կայսերական բանակին կը միանար։*

(3) *Բանակը Դորիւղէոնէն առաջ անցնելով Փռիւգական Ակսիւղոն անտառազուրկ բարձրաւանդակէն, կը հասնէր Կապորիկոն, ուր բանակին կը միանար Արեւելեան գումարտակը, որուն ճամբարը Ամորիոնի՝ «ԽԴ. աշտարակներու քաղաքին», մօտերը կը գտնուէր։ Հոս կը միանար նաև Սելեւկեան գումարտակը։*

(4) *Հոս բանակին կը կցուէին Կապադովկիոյ, Քարսիանոնի, և Բուկեղարիոնի արեւելեան գումարտակները։*

Բիւզանդական շրջանին Կեսարիա իբր առեւտրական կեդրոն իր հինէն ի վեր ունեցած կարեւորութիւնը չկորսնցուց։ Երբ Կ. Պոլիս մայրաքաղաքը կամ կեդրոնը եղաւ երկրին վարչութեան, այսինքն երբ Հռոմէական կայսրութիւնը երկուքի բաժնուեցաւ, Կեսարիան մայրաքաղաքին միացնող ճամբան դարձեալ կ'անցնէր Գաղատիայէն։ Այս շրջանին յարաբերութիւնները հաւանօրէն մեծապէս շատցած պէտք է ըլլան և հետեւաբար կարճ ճամբան շատ աւելի կարեւոր։ Ասկէ զատ քաղաքակրթութիւնը կը տարածուէր, հետեւաբար յարաբերութիւնները արագօրէն կը զարգանային Փոքր Ասիոյ այս մասին մէջ։ Բայց այդ կարճ ճամբան ունէր, ինչպէս ըսի, Ալիսի հեղեղներէն արգիլուելու անպատեհութիւնը, որ աճող անհամբերութեամբ մը կը դիտուէր, բան մը որ կայսեր պաշտօնական դիմումի մը կը յանգի։ Ուրախալի դիպուածով մը կը պահուի նամակ մը կամ խնդրանք մը Թէոդոս կայսեր ուղղուած, որ կը վերագրուի Ս. Բարսեղ Կեսարացիին, — սխալ՝ որուն կը պարտինք ապահովաբար անոր մեզի հասած ըլլալը — որուն գրողը կը նկարագրէ Ալիսի և իր գետակից Մելասի մեծ հեղեղները որոնք անանցանելի կը դարձնեն Ալիսը և կը խզեն հաղորդակցութիւնները Գաղատիոյ, Պափլագոնիոյ և Հելլեսպոնտոսի երեք նահանգներուն մէջ (համմ. Ramsay, նոյն, 256)։

Բիւզանդացիք դժբախտաբար չկրցան պաշտպանել քաղաքը մինչեւ վերջը արեւելեան բարբարոսներուն դէմ, հակառակ անոր որ եթէ ոչ քաղաքը գէթ անոր շրջակայքը նոյնիսկ Հայ նախկին թագաւորներու իբր ճորտական ստացուածք թողուցին (տես 412-435)։

Ալփասլան այդ վայրենի հորթաններու պետը 1067ին Կեսարիան գրաւեց և — ինչպէս ըսի արդէն — պղծեց Ս. Բարսեղի գերեզմանը և տարաւ անոր Սրբարանին դուռները՝ ոսկիով և մարգարիտներով ընդելուզուած (տես վերը, 449-450)։

Թէև Ռոմանոս յաջողեցաւ վանել Թուրք բարբարոսները Բիւզանդական Փոքր Ասիայէն սակայն Մանազկերտի պարտութենէն յետոյ ուր կայսրը գերի կ'իյնար (1071), արդէն վճռուած էր Բիւզանդական տիրապետութեան ճակատագիրը։

Թուրքերը այլեւս կը ներխուժէին Բիւզանդական երկիրներ և հոն կը տեղաւորուէին։

Ինչպէս արդէն բացատրուած է (տես վերը, էջ 451) — Ալփասլանի հետեւորդներէն Դանիշմանդ, հետզհետէ կը նուաճէ պարբերական յարձակումներով և աւերածումներով արեւելեան Փոքր Ասիան ի մէջ այլոց նաև Կեսարիան, որ 1073–1074ին աւերակի կը վերածուի (Բրուի–նիոս Բ. գլ. 3) այնպէս որ ո՛չ հեռու այս երբեմնի բազմամարդ և բարգաւաճ քաղաքէն, տարի մը յետոյ գտնուեցան ճակատամարտի մը մէջ իյնողներուն դիակները որոնք տակաւին լքուած կը մնային (Ատտալիատէս, 147) վասնզի անոնք իրենց գարշահոտութեամբը ոչ ոք անհանգիստ ըրած էին այս անապատի վերածուած երկրին մէջ (տես վերը, 451–452)։

Քրիստոնէական յիշատակներով և այնքան գեղեցիկ անցեալով քաղաքէն ոչինչ մնացած էր։ Երբեմնի բազմամարդ քաղաքը անմարդաբնակ դարձած էր և իր շինութիւնները՝ քարուքանդ։

6. ԱՐԴԻ ԿԱՄ ԹՐՔԱԿԱՆ ԿԵՍԱՐԻԱՆ.— Արդի կամ Թրքական Կեսարիան հիմնուած է 1072-1073ի կործանումէն յետոյ նոր տեղափոխութեամբ մը՝ արդի տեղը։



Բուն հիմնարկութեան թուականը յայտնի չէ։

Հաւանօրէն Փոքր Ասիա հաստատուած Թուրքերէն կամ Թիւրք-
մէններէն մաս մը հին պատկառելի քաղաքին մօտը հաստատուած են։

Ինչպէս ըսի արդէն այս քաղաքը քիչ յետոյ Դանիշմանդ վեհա-
պետ Մահմուտ կամ աւելի ճիշդ Մուհամմէտ Իբն Կիւմիւշտիկին (1124-1143), որ «էր... ատեցող քրիստոնէից, եւ կայր ... օրինօքն տաճկաց» և Կեսարիոյ մէջ քանդած էր «բազում եկեղեցիս» (Միխայէլ Ասորի, 414), կ'ամրացնէ, վասնզի պատմագիրը կ'ըսէ թէ «Շինեաց զԿեսարիոյ պարիսպն»։

Դանիշմանդեանց յաջորդեցին Սելջուկեանք որոնք ԺԱ. դարուն գրաւեցին այս քաղաքը և զայն դարձուցին իրենց թագաւորութեան երկրորդ քաղաքը (Encyclopédie de l'Islam, 703) ուր սովորաբար կը նստէին իբր կառավարիչ Ռումի Սուլթաններուն գահաժառանգները։

Այս շրջանը եղաւ բարգաւաճման ժամանակամիջոցներէն մէկը։

Այդ շրջանին՝ կատարուած են (վերը 503–522) կառուցումը կարեւոր յիշատակարաններուն, մզկիթներուն, մէտրէսէներուն և պարիսպներուն, որոնց շինութեան մէջ Հայերն ալ իրենց բաժինը պէտք է ունեցած ըլլան։

Արդի քաղաքին թրքական հիմնարկութեան փաստն է ոևէ յունական կամ բիւզանդական շինութեան հետք գտնուած չըլլալը պարիսպին շրջանակին մէջ, մինչդեռ գտնուած են, մանաւանդ հարաւային թաղերուն մէջ, բազմաթիւ իսլամական հին գերեզմաններ և թիւրպէներ(1), որոնք կը թուին միջնաբերդին ժամանակակից ըլլալ (V. Cuinet Ա. 313), մինչ ինչպէս տեսնուեցաւ պարիսպէն դուրս, աւելի հեռուն նոյն հարաւային ուղղութեան վրայ, բոլոր աւերակները յունական են (նոյն)։ Ասկէ դիւրին է հետեւցնել թէ Բիւզանդական Կեսարիան այլուր կը գտնուէր, այնպէս որ բացարձակապէս անտեղի է ոմանց (ինչպէս Բրօֆ. Ա. Կապրէլի և Քէմալէտտինի) այն կարծիքը թէ այսօր գոյութիւն ունեցող պարիսպի բեկորները և միջնաբերդը Յուստինիանոսի օրով կառուցուած պարիսպին մնացորդներն են։

Անոնք կը պատկանին Սելջուկեանց շրջանին և համապատասխան զարգացումով մը իրենց մէջ պարփակած են ամբողջովին քաղաքին կեդրոնական բազմաթիւ և շէն թաղերը։

Սելջուկ տիրապետութենէն յետոյ ԺԴ. դարուն Կեսարիա ստիպուեցաւ ճանչնալ բաւական երկար ատեն Մոնկոլ խաներու գերիշխանութիւնը, ինչ որ կը հաստատեն հոն հատուած դրամները։ Իբն Պաթթութա (Ibn Battuta) կը պնդէ թէ այս քաղաքին մէջ կը մնար Մոնկոլ զօրաւոր պահակազօրք (Encyclopédie de l'Islam, էջ 703) և

---

(1) Այս գմբեթաւոր թիւրպէները որոնք տեղացիք քումպէնտ կը կոչեն, Սելջուկեան մեծամեծներու գերեզմաններ են։ Անոնք ներսէն պատուած էին մարմարով։ Անոնցմէ ոմանց մէջ 2 և ոմանց մէջ 4–5 գերեզմաններ կային, սպիտակ մարմարինէ և պարսկերէն արձանագրութիւններով ինճիճ. (Աշխարհագրութիւն, Ա. մաս, Ա. հտ. 314)։

քաղաքը շրջապատուած էր (ԺԴ. դարուն սկիզբը) ամուր պարիսպով մը (Էպուլֆէտա Աշխարհագր. Ֆրանսերէն Թրգ. Gugard Բ. էջ 137)։

Նոյն դարուն նոյն արաբ աշխարհագիրին համաձայն քաղաքը ունէր «վազուն ջուրեր, պտուղներ, պտուղի պարտէզներ, ծառեր»:

Թաթար տիրապետութեան հետ իր անկումը կ'սկսի սակայն, վաղընդի 1301–1471, հարիւր եօթանասուն տարիներու շրջան մը քաղաքը երբեք չունեցաւ տեւական վիճակ մը, և Կեսարիան զանազան իշխանութիւններ իրարու ձեռքէ յափշտակեցին (տես 561–576)։

Ասկէ զատ 1344ին (հիճ. 735) պատահած մեծ երկրաշարժ մը կարեւոր վնասներ հասուցած է քաղաքին։

Կեսարիա Օսմ. տիրապետութեան ենթարկուելէն յետոյ պահեց իր առեւտրական նշանակութիւնը։ Անիկա ժամանակի մը համար զինուորական կայանի մը հանգամանքն ալ պահեց, մանաւորապէս Տաւրոսեան լեռնաշղթային ձորերուն և կատարներուն վրայ որջացած աւազակաբարոյ և ըմբոստ ցեղերուն կամ Եգիպտոսի Սուլթաններուն —որոնք մինչև Տաւրոս իրենց իշխանութեան տակ ունէին— դէմ գործող բանակներուն համար։

ԺԷ. դարէն յետոյ անիկա կորսնցուց իր զինուորական կարեւո-



ԿԵՍԱՐԻՈՅ ՄԱՆՐԱՆԿԱՐԸ
(Salahalmatrakiի կողմէ 400 տարի առաջ գծուած)

րութիւնը և վերջին ատեններըՙ միայն իբր առեւտրական կայան մը արժէք մը ունէր։ Հիմա Թուրք Հանրապետութիւնը կը ջանայ զայն դարձնել ճարտարարուեստական քաղաք մը հոն հիմնելով օդանաւի գործարան և հսկայ մանարաններ։

Մինչեւ ցարդ ինչպէս արդէն տեսնուեցաւ Թուրքերը Կեսարիոյ շատ բան մը չեն տուած, ընդհակառակը շատ բան քանդած են հոն։

Բնութիւնն ալ գործած է իր աւերը, վասնզի Կեսարիա այս շրջանին ալ զերծ չէ մնացած երկրաշարժներու աւերէն։



Այսպէս 1717 Ապրիլ 26ին առաւօտեանՙ արշալոյսին, մեծ երկրաշարժ մը եղած է, և քաղաքին գրեթէ մէկ քառորդը փլած, 3000ի չափ անձ ալ փլատակներուն տակ մնացած են։

Նոյնպէս 1825ին պատահած է երկրաշարժ մը, բաւական զօրաւոր որ կարեւոր վնասներ պատճառած է քաղաքին։

Դժբախտաբար քաղաքին հինգ հարիւր տարիներու անցեալը առարկայօրէն երկայացնող պատկերներ չունինք։

Միայն Կ. Պոլսոյ համալսարանին մատենադարանի Սալահահմաթրաքիի Սուլթան Սիւլէյմանի պարսկական արշաւանքներու վրայ խօսող մէկ ձեռագիր գիրքին մէջ Կեսարիոյ մէկ մանրանկարը կայ ուրկէ կը հասկցուի թէ քաղաքը պարսպապատ էր, ասկէ չորս հարիւր տարի առաջ։

Քէաթիպ Չէլէպի կամ Հաճի Գալֆա (1592–1656), հեղինակը Ճիհան-Նիւմայի, կը գովէ Կեսարիոյ շրջանին առատ բուսականութիւնը և սիրուն նկարագիրը և ինքն ալ Էպուլֆէտայի պէս կը հաստատէ թէ ան ունէր «առատ վազուն ջուրեր, այգիներ և պարտէզներ»։

Իսկ իրեն գրեթէ ժամանակակից Էվլիա Չէլէպի (ԺԷ. դարուն Ա. կիսուն ապրած) իր Սէյահաթնամէի մէջ տուած է Կեսարիոյ նկարագիրը որ շատ մը առարկելի ու ճշդութիւնը կասկածելի մասեր կը պարունակէ։ Ան կ'ըսէ թէ Կեսարիան պարիսպէն զատ կը պաշտպանէր հիւսիսէն ընդարձակ բարձունք մը, այս լերան կողմէն ուղղակի պարիսպով մը պաշտպանուելով հանդերձ։ Այս բարձունքը ըստ իրեն կը գրաւէր մասամբ Փաշա Սարային որ անշուշտ արդի կառավարչատան տեղը պիտի ըլլար (տես բերդերուն յատակագիծը, էջ 680)։

Այս աշխարհագիրին վկայութեան համաձայն հոն տնկուած էին ուռիներու պուրակներ որոնց շուքին տակ կային վազուն ջուրի աղբիւրներ և շատրուաններ։

Էվլիա Չէլէպի քաղաքին մէջ կը յիշատակէ բազմաթիւ մզկիթներ, մեդրէսէներ, խաներ, բաղնիքներ որոնցմէ ոմանք այսօր գոյութիւն չունին (Քէմալէտտին, էջ 40)։

Էվլիա Չէլէպիի ատեն ինչպէս կ'երեւայ քաղաքը ընդարձակուիլ սկսած էր պարիսպէն դուրս, ուր կարեւոր թաղ մը կազմուած էր, Իչէրի Շարի դէմը, որուն տուները պարտէզներու և պողոտաններու միջև տարածուած էին։ Ասկէ որոշ կը հասկցուի թէ ԺԷ. դարուն դեռ քաղաքը չունէր արդի տարածութիւնը և այն ատեն պարիսպէն դուրսՙ պարտէզները շատ աւելի էին և պարիսպները կանանչութեամբ շրջապատուած։

Քիչ շատ այս ճշմարտանման տեղեկութիւններուն հետ անիկա կու տայ կարգ մը ուրիշներ որոնք բնաւ չեն համաձայնիր արդի կացութեան։ Այսպէս իբր թէ Արգէոս լերան ստորոտը բարձր մէկ բլուրի մը վրայ ծաւալը մեծ փիղի մը մեծութիւնը ունեցող քարերով բերդ մը շինուած էր, արդի քաղաքէն 1000 ոտք հեռու, որուն դրան կամարին վրայ դէմ դէմի կային առիւծի մը և վագրի մը արձանները։ Այս դուռնէն ներս կային զէնքերու և պարէններու մթերանոցներ և 600 տուներ։ Այսօր բլուրի մը վրայ շինուած բերդ մը չկայ, փիղի մեծութեամբ քարերով և առիւծի և վագրի արձաններով, թէև կարելի ըլլայ իր նկարագրութիւնը քիչ շատ պատշաճեցնել Իչ Գալէին։ Նոյնպէս առասպելի տպաւորութիւն կը թողուն,

այն խօսքերը թէ վարի քաղաքը հարթ դաշտին վրայ քառակուսի յղկուած քարերով շինուած հին բերդ մը ունեցող մեծ արուարձան մըն էր, որ 1000ի չափ կղմինտրով երկյարկ տուներ կը պարունակէր։

Կեսարիա իրմէ 200 տարի յետոյ ալ երկյարկ և կղմինտրով ծածկուած տուներ չունէր։ Հետեւաբար միայն այս խօսքերը իր տեղեկութեանց արժէքը կը նուազեցնեն։

Այս երկու Թուրք աշխարհագիրներուն ժամանակակից ունինք նաև Հայ այցելուի մը՝ Սիմէոն Դպիր Լեհացիի վկայութիւնը։

Այս դպիրը որ 1617ին այցելած է Կեսարիա, Թրքական Կեսարիոյ ողբալի վիճակը շատ լաւ կը պատկերացնէ ըսելով թէ «Տներն խամ քարպիչ է. դռվին փոքր, կկզելով մտնուն, վասն որոյ եւ քաղաքն աւեր եւ վէրան: Ունի խաներ, պէզէստան, խանութնի, չարշու պազար եւ ոսկերչինոց, բայց սակաւ մարդ ինմա կ'երեւին: ...Տեսի եաբոյք հին եւ նոր ի ներս քաղաքին եւ ի դուրս(1), այլ եւ եկեղեցիք մեծամեծք եւ կամարակապք, վիմաշէն: Այլ եւ այն եկեղեցին, ուր սուրբ Լուսաւորիչն մեր եւ Ներսէս հայրապետն ձեռնադրեցաւ Ղեւոնդիոս Պատրիարգէն, որ է մեծ եւ փառաւոր. ամէն զամէնն մէջիք արած է(2): Այլ եւ բազում ուխտատեղիք կան ներս եւ ի դուրսն: Եւ Բարսեղ Կեսարացուն սուրբ գերեզմանն քաղքէն դուրս է, յարեւելեան դիհ. յառաջն մեծ եկեղեցի էր, այժմ հանգել է. անդ թաղեն զմեռեալս Հայք, զէ քարերն հանել են եւ բերդին շէնք են դրել(3): Եւ ի հարաւակողմն պարիսպն դուրսն մեծ եկեղեցի Մեռկերիոսի զինաւորին, որ եւ գերեզմանն անդ է. եւ

ՀԱՐԻՒՐ ՏԱՐԻ ԱՌՋԻ ԿԵՍԱՐԻԱՆ
(Texierի նկարը)

(1) Ասիկա փաստ մըն է թէ այն ատեն դեռ պարիսպը կը մնար։
1) Ղուանդ ճամիին կամ Ուլու ճամիին կ'ակնարկէ։
2) Կը հաստատէ Միքայէլ Ասորիէ աւանդուածը։



նա հանգած է. փոքր ղուպա մի մնացեալ է միայն, սուրբ գերեզմանին վրայ խորան, զոր ամէն երկուշաբթի օր ուխտ կ'երթայ բոլոր քաղաքն խնկօք եւ մոմեղինօք...: Եւ այլ բազում ոսկերք եւ մասն կայ անդ սրբոց եւ եկեղեցիք յոլովք որպէս ի Սդամպօլ, բայց աւեր, միայն նշմարանքն կ'երեւան» (ՀԱ. 1935, 90-91):

Ամէն կողմ աւերակ, ամէն կողմ քանդուած, ճշգրիտ պատկերը Թրքական տիրապետութեան, որ ոչինչ կը բերէր քաղաքին։

Մօտաւորապէս հարիւր տարիներ առաջ Texier (Description de l'Asie Mineure, Paris, 1849) ալ տուած է Կեսարիոյ նկարագիրը ինչպէս նաև նկարը, որ շատ չի տարբերիր երկու հարիւր տարիներ առաջ Սիմէոն Դպիր Լեհացիի և հարիւր տարի վերջը մեր օրերու վիճակէն, ինչ որ ցոյց կուտայ թէ Թուրքերը ինչ տուած կամ աւելի ճիշդ ինչ չեն տուած քաղաքին։

Բ.

## ԿԵՍԱՐԻՈՅ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

Կեսարիոյ Հայ արքեպիսկոպոսական վիճակին կապուած թեմերը, ինչպէս յետոյ պիտի տեսնուի, միշտ անփոփոխ չեն մնացած։ Անոնք երբեմն աւելցած և երբեմն ալ պակսած են պարագաներուն և պահանջին համաձայն։

Նկատելով որ Կեսարիոյ քաղաքին և իր շրջակայից բնակչութեան մէջ իրապէս գոյութիւն ունի ոչ միայն ցեղային, այլ նաև իբր միևնոյն միջավայրի մէջ ապրող համայնքներու, ճակատագրի նոյնութիւն մը և զանազան առընչութիւններ և կապակցութիւններ, որոնք կարելի չէ անտեսել, պիտի ջանամ ամփոփ կերպով իւրաքանչիւր քաղաքի կամ գիւղի մասին տալ մասնաւոր տեղեկութիւններ։

Միջավայրի նոյնութիւնը — որ դարերու անցեալ մը ունի իր ետին —, անշուշտ անոնց մէջ ստեղծած է նկարագիրի, խառնուածքի, բարքերու և սովորութեանց նմանութիւններ, որոնք աւելի կամ պակաս չեշտուած գիծերով կը տեսնուին Արգէոսի շուրջը բոլորուած այս մեծ ու փոքր քաղաքներու և գիւղերու Հայ բնակչութեան մէջ և զանոնք ամէնն ալ մեծ քաղաքին անունով՝ կը դարձնեն Կեսարացիներ, երբ մանաւանդ անոնք կը հեռանան իրենց բնավայրէն։ Ո՛չ միայն Կեսարացիի պիտակը, որ առհասարակ իւրացուցած են շրջակայքի Հայ բնակիչները, կը հարկադրէ մեզի նայիլ անոնց վրայ իբր ամբողջութեան մը մասերը, այլ նաև այն կապակցութիւնը որ անոնք ունին այն պատմական անցեալին՝ որ Արգէոսի շրջակայքի երկիրներուն կեանքը եղաւ և այն ապրումներուն՝ որ Հայերը հոն այդ աշխարհամասին մէջ ունեցան։

Ընդհանուր պատկերացումէն յետոյ հարկ էր որ ինչպէս Կեսարիոյ

քաղաքին նոյնպէս նաև Թեմին ենթակայ քաղաքներուն և գիւղերուն մասնաւորութիւններն ալ ներկայացուէին, առանց վերստին անդրադառնալու պատմական անցքերուն որոնք ընդհանուրին կը պատկանին։

Այս հասկացողութեամբ ահա կը ներկայացնեմ Կեսարիոյ վիճակին պատկանող Թեմերը, զանոնք երեք մեծ շրջանակներու բաժնելով։

## Ա.

## ԱՅՍՐ-ԱՐԳԵՂՈՍԵԱՆ ՇՐՋԱՆԱԿ

## I

# ԹԱԼԱՍ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՊԱՏ.

Կեսարիայէն 5 քիլոմէթր կամ մէկ ժամ հեռու Հայերէն՝ Ս. Բարսեղ Հայրապետ, Յոյներէն՝ Այ-Վասիլ և Թուրքերէն, Ալի տաղ կոչուած լերան և արեւելեան բլրաշարքին կազմած անկիւնին վրայ, մասամբ դաշտին և աւելի մեծ մասամբ բլուրին կողին հաստատուած է Թալաս աւանը, Կեսարիոյ գիւղօրէից ամէնէն շքեղը, որ իր գեղեցիկ այգիներով և գեղազուարճ պարտէզներով եզերուած բարձր ու օդասուն դիրքով, զով և արգէոսեան վճիտ ջուրով և հարուստ շէնքերով, ամարանոցի ամէն պայմանները կը լրացնէր։ «Քանի մը տուներ եւրոպական ամառանոցի մը պատրանքը կը ներշնչեն, մինչ հեռուն ամերիկեան հիւանդանոցը հոյակապ տեսք մը ունի» (Վ. Թէքէեան, ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, Թ. 830)։

Իր բնական դիրքը, մաքուր օդը և ջուրը, թերեւս նախասահմանած էին այս աւանը նշանաւոր քաղաք մը դառնալու, սակայն Կեսարիոյ մօտաւորութիւնը արգելք եղած է և Թալաս մնացած է միշտ գիւղաքաղաք մը։

Գ. Պետրոս Մարթաեան անկեղծութիւնը կ'ունենայ ըսելու թէ անծանօթ օտար մը 1–2 ժամ հեռուէն դիտելով անպատճառ Թալասը՝ Կեսարիա և Կեսարիան՝ Թալաս կարծելու պիտի մղուէր որովհետև Թալասի արտաքին տեսքը որքան գեղեցիկ և հաճոյալի, ընդհակառակը, Կեսարիոյ արտաքին տեսարանն ալ այնչափ տգեղ է։

«Իր ամփիթատրոնաձեւ դիրքովը եւ իր ընդգրկած տեսարանին վեհութեամբը իրաւամբ նկատուած է Կեսարիոյ Բերան: Չենք սխալիր եթէ նոյնիսկ ըսենք թէ Անատոլուի ներքնամասին ամենաշքեղ քաղաքն է ան: Ապառաժներու վրայ բարձրացած իր հոյաշէն տուները, երեք յունական եւ երկու հայկական փառաւոր եկեղեցիները, վերջապէս եանքիներու ընդարձակ գետիններու վրայ բարձրացուցած հին ու նոր վարժարանները, հիւանդանոցը եւ ասոնց յարակից բազմաթիւ յարկաբաժիններու ականակապ փունջը եւ զանոնք շրջապատող հարուստ ու զունազեղ բուսականութիւնը՝ ակնապարար երեւոյթ մը տուած են քաղաքին արդարեւ»։

Իր տեսարանը «Հիանալի է արդարեւ, երբ մանաւանդ դիտողը կանգնած է այն բլուրին վրայ որուն գագաթին բազմած է Ամերիկեան նոր վարժարանը։ Հոնկից կ'երեւի ամբողջ այն դաշտագետինը որ տարածուած է Արգեղոսի հիւսի-



սը: Սոյն դաշտին կեդրոնը Բեյիար կոկորդիլոսի մը դիրքով պառկած կ'երեւի Կեսարիան իր եօթն մինարէներու սլաքները ուղղելով դէպ ի կապոյտը: Անկից անդին կը տեսնուի Աճի չայ գետակին Սեւ գիծը որ կը սողայ կանանչ երիզներու ընդմէջէն եւ կը կորսուի արեւմուտքի սարերու ետին: Աչքիդ առջեւ են նաեւ Կեսարիոյ ամառանոցներու շարքերը իրենց որոշ բաժանումներով, նաեւ Արգեղոսը եւ անոր լանջքը ունեցող բարձրաւանդակները: Ասդին աւանին ճիշդ մօտէն սեպուղղորդ բարձրացած Այ-Վասիլի լեռը կ'երեւի իր բովանդակ վայելչութեամբ եւ իր հեղեղատի գիծերը իրենց մանրամասներովը: Անոր քղանցքին ետեւ մէյմէկ գեղածիծաղ հովիտներու մէջ պառկած կ'երեւին երկու գեղաշուք յունական գիւղերը, Զինճիտէրէն նշանաւոր իր պատմական ու հարուստ վանքովը եւ Էնտիւլլիկ։ Վերջապէս ետիդ կը նմարես Տէրէվանքի բլուրները եւ Թավլուսունը, Կէրմիրը, Ճըռլավուգը եւ դաշտէն անդին Մունճուսու-




ԹԱԼԱՍ

նը, որոնք մէյմէկ բարձունքի կողին կծկուած կարծես պահուտուք կը խաղան:

Ասոնցմէ զատ բաց գիրքի մը պէս աչքիդ առջեւն է ինքը աւանը, իր նեղ ու զիկզակ փողոցներու գիծերովը, իր բնակարաններուն գրեթէ ամբողջ յատակագծովը, նոյնիսկ անոնց ներքին բաժանումներովը: Վերջապէս ոտքիդ տակ են Թալասցիներու սիրական ճէմէլիքը որ կ'ըսուի Գօրտօն պօյը, եւ նշանաւոր Զարտաք պաշին։ Այս վերջինը պարզ հեղեղատ մըն է յաճախ չոր. բայց վեհ երեւոյթ մը կ'առնէ, երբ անձրեւի հեղեղները սկսին. այն ատեն ջուրը խորդ ու ժայռոտ զառիթափներէ ոստոստելով կու գայ եւ հարիւր յիսուն ոտք բարձրութեամբ ապառաժներու վրայէն կը գահավիժի, Վարի Թաղի հայաբնակ մասին մէջ ախորժալուր արձագանգը ծաւալելով ամբողջ աւանին մէջ» (Ձեռագիր Եղիազարեանի)։

Այս հեղեղատին վերի ծայրը բաւական ակներև կերպով հին չորս ոտքերու վրայ կառուցուած կամար մը կար, ուր հին ատենները պա-

հապան մը կ'սպասէր գիւղին վրայ յարձակող թշնամիներու գալուստը իմացնելու համար զանգակահարութեամբ (Ֆէլէք, 1882, էջ 92)։

Թալաս իր այս գմայլելի դիրքով և առողջարար օդով և ջուրով(1), քաղաքին գեղեցկագոյն և նոյնպէս անոր ամէնէն մօտի ամարանոցն է, որ գեղեցիկ ծառազարդ խճուղիով(2) մըն ալ — միակը թերեւս ամբողջ շրջանին մէջ — քաղաքին կապուած ըլլալու առաւելութիւնը ունի։

Հոս կէս-քաղքենի է եռուզեռը մարդերու։ «Շէնքերը համապատասխան են իր դիրքին, արեւը կ'ողողէ զայն, բիրելով միապաղաղ դաշտէն մինչեւ քաղաք եւ աւելի հեռուն, սոխակը կ'ողէ իր երգը զուարթ, առաւօտեան զեփիւռը կ'առնէ կը բերէ բոյրերը Բարսեղ Հայրապետի լերան ծաղիկներուն, եւ վեհապանծ Արգէոս կը դրկէ անոր իր ջուրերը զուլալ» (Աշոտ քհնյ. Երկաթ, Ամէնուն Տարեցոյց, 1923, էջ 362)։

Ինչպէս Թուրքիոյ ներքին բոլոր քաղաքները նոյնպէս նաև Թալաս չէ ունեցած փողոցներու կանոնաւորութիւն և քաղաքի բարեզարդութիւն։ Ո՛չ ջանք եղած է աւանը գեղազարդելու և ո՛չ ալ կանոնաւոր ճամբաներ շինելու։ Փողոցները՝ սալարկուած չեն և ո՛չ ալ արձակ ու լայն։

Իր տուները առ հասարակ գեղջուկ տնակներ են որոնց քով կանգնած են 100էն աւելի հոյակերտ շէնքեր՝ որոնք հազարաւոր ոսկիներ արժած են իրենց տէրերուն (Նոյն, էջ 360)։

ԱՆՑԵԱԼ.

Թալաս (Ֆր. Tallas) ըստ Քիր. Լէվիտիսի(3) կրճատումն է և աղաւաղումը Մութալա՛սքի (Μουταλάσκη) բառին, որ հին քաղաքի մը անունն էր նոյն վայրին վրայ գոյութիւն ունեցող (Յ. Վ. Յակոբեան, ԲԻՒՐԱԿՆ, 1899, էջ 602)։

Ոմանք քաշքշուք ստուգաբանութեամբ մը զայն ծագած կը համարեն թալաստ (յուն. ծով) բառէն։

Թալաս Հռոմէական տիրապետութեան շրջանին արդէն ծաղկեալ քաղաք մըն էր։ Անիկա հայրենիքն էր Ս. Սաբբայի, համբաւաւոր մենակեացին, որ ծնած էր մօտաւորապէս 439ին և մեռած՝ ի Պաղեստին, գրեթէ հարիւրամեայ, Արեւելքը լեցնելէ յետոյ իր համբաւովը (հմմտ. Vital Cuinet, Ա. 319)։

Թալաս Օսմ. տիրապետութեան շրջանին, կուսակալութեանց վերակազմութենէն առաջ, նստոցն էր Վոյվոտայի կամ միւտիրի մը։ Իսկ յետոյ Թալաս միայն կալուածոց և տրոց վարչութիւն մը ունէր և լիվային կապուած էր։

---

(1) Թալասցիք երբեմն կը նեղուէին արհեստական ջրհորներու պղտոր ջուրին սպառելէն։

(2) Այս ճամբան շինուած է 1863ին Կեսարիոյ գայմագամ Համիտ պէյի նախաձեռնութեամբ և Կիւլպէնկեան Քերովբէի օժանդակութեամբ։

(3) Երբեմն տեսուչ Կեսարիոյ Զինճիտէրէ գիւղին Յունաց Ս. Կարապետ (Αγίου Προδρόμου) վանուց դպրեվանքի վարժարանին և հեղինակ «Վանօրայք Կապադովկիոյ եւ Լիկայոնիոյ» և «Եկեղեցական պատմութիւն Կապադովկիոյ» յունարէն գնահատելի երկերուն։



ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Թալաս խառն բնակչութեամբ վայր մըն էր։ Հ. Ղուկաս վարդ. Ինճիճեան, 1806ին (տես Աշխարհ. Ա. 314) Թալասի բնակչութիւնը կը դնէ «տունք աւելի քան 2000, ըստ մեծ մասին Յոյնք, իսկ յազգէս Հայոց տունք իբր 150... Նոյնչափ են թուով գրեթէ եւ տունք Տաճկաց»։

Եթէ այս թիւերը ճիշդ են, Հայոց թիւը, ինչպէս Թուրքերու, ժթ. դարուն, անօրինակ աճում մը ունեցած է, ի փոխ Յունաց, վասնզի Թալաս ունէր, 1874ին (Փունջ, թ. 936), 2200 տուն բնակիչ, որուն 700ը Հայ։ 1882-1886-1902 դարձեալ տուներուն թիւն նշանակուած կը գտնենք 2200 (800 Հայ, 900 Յոյն և 500 Թուրք) (Յովհ. Պալըգճեան, Ֆէլէք, Ա. տարի, էջ 90. Վտարանդին, Մասիս, 1886, Նոյ. 15, թ. 3848 և Հ.Ս. Էփրիկեան, Բնաշխարհիկ Բառարան, 1902), և անձերու 12000 (Ֆէլէք նոյն) մինչ նոյն թուականներուն, այսինքն 1889ին այցելու մը կը նշանակէ 3000 տուն (Ղեւոնդ քհ. Տ. Ստեփանեան, Փունջ, թ. 2170)։

1891ին Vital Cuinet իր ծանօթ գործին մէջ ընդհանուր բնակ-



ԹԱԼԱՍ

չութիւնը առանց ստորաբաժանման կը նշանակէ 3-4 հազար անձ։ 1894ին Կ. Ղ. Կէլեան (Փունջ, թ. 2402) որ տեղացի ըլլալով իրազեկ ըլլալու առաւելութիւնը կը ներկայացնէ, Թալասի բնակչութիւնը կը հաշուէր 3000 տուն (1200 Հայ, 1500 Յոյն, 280 Թուրք և 20 Բողոքական) և 5000 անձ, ինչ որ ըմբռնելի չէ, վասնզի ամէն տուն երկու անձ ալ բնակիչ չունենար։

1913ին Աշոտ քհ. Երկաթ, Թալասի բնակչութիւնը կը հաշուէ դարձեալ 3000 տուն (1500 Յոյն, 900 Հայ, 600 Թուրք)։

Եղիազարեան նոյնպէս կը հաշուէ 4000 տուն և 10000 անձ։

Տարագրութենէն յետոյ Թալասի բնակչութիւնը, հազիւ 200 անձ էր (1924ին) որոնք սակայն ցրուեցան անգործութեան և ապրուստի դժուարութեան հետեւանքով և 1927ին անոնց թիւը իջած էր 175ի և 1932ին՝ 150ին բնիկ և եկուոր խառն։

ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ.

Թալաս բաժնուած է հինգ մասերու։ 1. ՎԱՐԻ ԹԱՂ (Ասաղը Մահէլլէ) 2. ՎԵՐԻ ԹԱՂ (Եուգարը Մահէլլէ), 3. ԹԱՊԼԱ ԳԱԵԱ, 4. ՊԷՔՃԻԼԻՔ, 5. ՔԻՉԻ ՔԷՕՅ։

1. «ՎԱՐԻ ԹԱՂԸ տարածուած է բլրաշարքին քղանցքին եւ կողերուն ստորին մասերուն վրայ եւ **Վերի Թաղէն** բաժնուած է ապառաժներու շողանցով մը: Քաղաքին այս մասին մէջ է շուկան, յունական երկու եւ հայկական մէկ եկեղեցիները, Հայ-բողոքական ժողովարանը, վերջապէս աւանին ամէնէն հոյակապ մզկիթները» (ձեռագիր Եղիազարեանի)։

Թալաս իրմէ ժամ մը հեռուն գտնուող քաղաքին հազարաւոր խանութներուն դէմ հազիւ 200 (1) հատ միայն ունի, և որ սակայն իր պէտքին լի ու լի կը բաւեն (Կ. Կ. Տէվէլեան, Սուրհանդակ, 11 Փետր. 1901, Թ. 591)։

Այս Թաղին՝ որ աւանին հնագոյն մասը ըլլալ կը թուի բարգաւաճման մէջ կարեւոր դեր ունեցած են հայերը, վասնզի Քիւբէլի, Խուպէսէրլի և ուրիշ այսօրինակ Հայ ծանօթ ընտանիքներու անունով թաղամասեր կան (Ֆէլէք, 1882. 90)։

Այս Թաղին մէջ Հայերը ունին կամարաչէն Ս. Թորոս անուն եկեղեցի մը, որ հաստատուած է Վարի Թաղին և բլուրներուն մէջ խորացած ձորին մէջտեղ։ «Անզմբէք եկեղեցի մըն էր, փոքր, պարզուկ, բայց վայելուչ, փոքր է նաեւ բակը, իր փառքը կը կազմէին իր զանգակատունը — զուցէ ամէնէն հոյակապը Հայ զանգակատուններուն մէջ եռյարկանի, խոյակներու վրայ կամարաձեւ բարձրացած ակնապարար կոթող մըն է ան եւ շինուած է Իզմիրի Պալեօզեաններուն ծախքով» (Եղիազարեան)։

1659ին առաջին անգամ Տօնացոյցի մը ձեռագիրին մէջ յիշուած ըլլալով Թալասի Ս. Թորոս եկեղեցին, կը կարծեմ որ անոր նախնական շինութիւնը պատկառելի հնութիւն մը պէտք է ունեցած ըլլայ։

Անիկա երկար ատեն Թալասի ազգային միակ յիշատակարանը եղած է, վասնզի մինչեւ ԺԹ. դարուն սկիզբը — ինչպէս կը վկայէ Հ. Ղուկաս Ինճիճեան — Թալասի մէջ Հայերը ունէին միակ եկեղեցի մը Ս. Թորոս անունով (Աշխարհ. Ա. հտ. էջ 314)։

1874ին կազմուած վիճակագրութիւն մը, Յովհաննէս Պալըգճեան (Ֆէլէք, 1882, էջ 91) վտարանդի (Մասիս, 3848), Հ. Ս. Էփիկեան (Բնաշխարհիկ Բառարան) և վերջապէս Տրդատ եպ. Պալեան (Հիւանդանոցի Ընդհ. Ցուցոյց, 1903 և 1904) Վարի Թաղին միակ եկեղեցին Ս. Երրորդութիւն անունով կը ներկայացնեն։ Կ. Ղ. Սէլեան (Փունջ, Թ. 2402, 1894, Մարտ 19) Վարի Թաղին միակ եկեղեցին դարձեալ Ս. Թորոս անունով յիշած ըլլալով, կը խորհիմ թէ եկեղեցիին նախնական անունը Ս. Թորոս էր, և վերաշինութեան մը առթիւ անուանափոխու-

(1) Կ. Ղ. Սէլեան (Փունջ, 1894, Մարտ 9, Թ. 4202) խանութներուն թիւը նշանակած է 100։



թեան մը ենթարկուած է, սակայն ժողովուրդին մէջ ապրած է հին անունը։

Վարի Թաղի եկեղեցիին արտաքին դրան դիմացը ընդարձակ և վայելուչ տան մը երեւոյթով կանգնած էին Հայերը՝ Խուպէսէրեան վարժարանը, որ նախապէս կը կոչուէր Արշակունեան:

Այս վարժարանը՝ նախկին վարժարանին տեղ կառուցած է Յակոբ աղա Խուպէսէրեան (1705–1887 †) որ Թալասի Վարի Թաղին իր մատուցած մեծ ծառայութեանց համար թաղուած էր Ս. Թորոս եկեղեցիին բակը։

Խուպէսէրեան վարժարանին կ'աշակերտէին 1901ին 115 մանչեր, ամէնքն ալ անթօշակ։

Կարապետ Խուպէսէրեան իր հօրը կողմէ կառուցուած այս վարժարանին նպաստած է միշտ իր կենդանութեան ամսական 150 ղրշ.



ԹԱԼԱՍԻ Ս. ԹՈՐՈՍ ԵԿԵՂԵՑԻՆ

վճարելով, մինչ եկեղեցւոյ սնտուկը կը վճարէր 400 ղրշ. որով կը փակուէր արդէն դպրոցին ամսական 550 ղրշ. ծախքը (Վիճակացոյց Գաւառ. Ազգ. Վարժարանաց. 1901, էջ 9)։ Կարապետ Խուպէսէրեանի մահէն յետոյ այս վարժարանը ստացաւ իրեն կտակած 3000 ոսկիի տոկոսը, և անով մատակարարուեցաւ։

Այս Թաղին մէջ շինուած է 1877ին աղջիկներու վարժարան մը, Եգիպտոս հաստատուած բնիկ Թալասցի Յակոբ Աշըգեանի († 1887) ծախքով և կոչուած է Աշըգեան վարժարան:

1886ին այս վարժարանը կը յաճախէին 50ի չափ և 1901ին 60ի չափ աշակերտուհիներ և ունէր ամիսը 100 ղրշ. ծախք, որ եկեղեցիին սնտուկը կը հայթայթէր։

2. «ՎԵՐԻ ԹԱՂԸ գրեթէ 100 մէթր բարձրութեամբ զոգցես հպարտ եւ վեհանձն լերան մը գագաթին նման իր զոռոզ ճակատը պարզած՝ վերէն վար կը տիրէ եւ կը տիրապետէ աւանին միւս թաղերուն» (*Կ. Ղ. Սէլեան*, Փաւնչ, *Թ.* 2402): «Ան միակ թաղն է որ զուտ Հայաբնակ է, հոն կը գտնուին Հայկական, Յունական, Ամերիկեան մէյ մէկ եկեղեցիները, Ամերիկեան վարժարանները ու հիւանդանոցը, ինչպէս նաեւ աւանին ամէնէն հոյակապ տուները, որոնց մէջ շատեր կան որ քանէն մինչեւ քառասուն սենեակ ունին» (*Եղիազարեանի ձեռագիր*)։

*Աշոտ քհ. Երկաթ կ'ըսէ թէ* «զմայլելի է այս թաղին դիրքը՝ ակնապարար տեսարանով եւ մէկ մէկու դէմ ելեւէջող 2-3 յարկ բնակարաններով որոնք կառուցուած են կոպածոյ կարծքարի եւ գորշախայտ կրաքարի ագուցումներով, այնքան վայելուչ արտաքուստ ու ներքուստ, ուր կոթողուած են միակտուր սիւներ՝ իրենց խոյակներով, կամարներն ալ կողակներու աջ ու ձախ բոլորումներով: Արեւելեան ճարտարապետութեան այդ փառաւոր նմոյշները կ'ընդմիջուին ուրեք ուրեք դալարազեղ պարտէզներով՝ որոնք դիւթական քօղ մը կ'աւելցնեն՝ համայնապատկերին վրայ» (Ամէնուն Տարեցոյցը, 1923, էջ 360)։

*Այս թաղը կը կոչուի նաև իր զուտ հայաբնակ ըլլալուն համար* Հայաստանլըգ (*Գ. Պետրոս Մարթաեանէ հաղորդուած տեղեկութիւն*)։

*Այս թաղին շատ մը թաղամասերը կը կրեն տեղացի Հայ ընտանիքներու անունները, ինչպէս Կիւլպէնկ, Թիւրապ, Սէլեան, Րէիս, Գարաման, Քեարպանպաշ*, (Ֆէլէք, 1882, էջ 90)։

*Այս թաղին կեդրոնը հաստատուած էր Ս. Աստուածածին եկեղեցին*, «որ միջակ մեծութեամբ, հաստատուն եւ վայելուչ եկեղեցի մըն էր, նոր քանդակներով զարդարուած եւ նոր կահերով օժտուած: Վայելուչ կաթողիկէ մը եւ աւելի վայելուչ զանգակատուն մը կը պսակեն իր գագաթը: Ընդարձակ բակ մը ունի յատակուած սրբատաշ ու խոշոր սալաքարերով» (*Եղիազարեան*)։

*Կարելի է խորհիլ թէ այս շէնքը որ առաջին շինութիւն մը չէ հաւանօրէն Թալասի այս Նորագոյն թաղին մէջ կառուցուած է ԺԹ. դարուն անոր կազմութենէն յետոյ, գերեզմանատան մը գետնին վրայ, որոնք ըստ օրինի քաղաքէն դուրս պէտք էին գտնուիլ, մինչ հոս ճիշդ մօտն է եկեղեցիին, ինչպէս կը հաստատէ Եղիազարեան՝ գրելով որ* «Ս. Աստուածածնի ճիշդ դիմացը, արեւելակողմի փողոցին հանդիպակաց կողմը կ'երեւի դուռ մը: Ան կը բացուի փոքր, քառանկիւն պտղատու կամ անպտուղ ծառերով հովանաւորուած եւ բարձր պատերով շրջապատուած գեղեցիկ գերեզմանատան մը վրայ: Վերի Թաղի Հայոց գերեզմանատունն է ան»: *Այս եկեղեցիին պատարագի գեղեցիկ զգեստ մը նուիրած էր Հանգ. Յակոբ Պէյլէրեան* (Ֆէլէք, 1882, էջ 91) *մեծահարուստ Պոլսեբնակ կեսարացի ազգանուէրը*։

*Ս. Աստուածածին եկեղեցիին հիւսիսային կողմը կը բարձրանար, գմբեթաւոր հոյակապ աղջիկներու վարժարանը որ կառուցուած էր* 1860*ին Կիւլպէնկեան Տիկ. Մարիամի*(1) *ծախքով, որ տարիներով տարեկան ծախքը* 120-150 *ոսկի իր կողմէն վճարած է* (Ֆէլէք, 1882, էջ 91)։ *Այս վարժարանը կը կոչուէր* Վարդ-Պատրիկեան։

*Անոր մօտն էր մանչերու վարժարանը, որ կառուցած էին* 1848*ին*

(1) *Մայր՝ Սարգիս և Սերովբէ Կիւլպէնկեան եղբայրներու*։



*դարձեալ Կիւլպէնկեանները*(1), *և նոյնպէս կը կոչուէր* Վարդ-Պատրիկեան, *յարգանք ընծայելով Կիւլպէնկեանց ընտանեկան աւանդութեան*։

*Ուսանողութեան թիւն* 1900*ական թուականներուն սկիզբը* 170 *մանչ և* 140 *աղջիկ էր։ Այս թաղին կրթական հաստատութեանց բարերարները, Կիւլպէնկեան Սերովբէ և Սարգիս հարազատներուն զաւակները*, 1908*ին երբ Օսմ. Սահմանադրութիւնը հռչակուեցաւ և* Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը *վերակազմուեցաւ, անոր միջոցով հոգացին Վարդ-Պատրիկեան աղջիկներու նախակրթարանին բոլոր ծախքերը, որոնք* 1901*ին կազմուած վիճակագրութեան մը համաձայն ամսական* 1100 *ղրշ. էին։ Իսկ տեղացիք իրենց միջոցներով կը հոգային մինչև Ընդհ. Պատերազմ Վարդ-Պատրիկեան մանչերու նախակրթարա-*



1. Տ. Հմայեակ Քհ. Բաբեղեան, 2. Խորէն Մկրտիչեան (Տնօրէն),
3. Յարութիւն Սեփանեան (Ուսուցիչ)

*նին և մանկապարտէզին ծախքերը* (*Աշոտ քհ. Երկաթ, նոյն, էջ* 362) *որոնք ամսական* 1200 *ղրշ.ի* (1000 *ղրշ. եկեղեցւոյ Մնտուկէն և* 200*ղրշ. թոշակներէ հայթայթուած*) *կը հասնէին* (*տես* Վիճակացոյց Գաւառական Ազգային Վարժարանաց Թուրքիոյ. վիճակ 1901 տարւոյ, 1901, էջ 9)։

*Ս. Աստուածածին եկեղեցիին հարաւ-արեւելեան անկիւնը հաստատուած էր մանկապարտէզը իր յարակից մասերով*։

*Այս թաղին մէջ էին Ամերիկեան հաստատութիւնները, որոնցմէ ամէնէն գլխաւորն էր Տոքթ. Տատի Հիւանդանոցը, Թալասի գթութեան*

(1) *Յովհ. Փալըգեան* (Ֆէլէք, 1882, էջ 90) *կ'ըսէ թէ դպրոցին դրան վրայ գրուած յիշատակարան մը իբր շինութեան սատարող կը յիշատակէ անունները՝ Հանգուցեալ Աւետիսի, Կիւլապիի, Գալուստի և Սերովբէի և Մարինոս և Սրբուհի տիկիններու*։

տունը, որ 1890ական թուականներու հաստատուած նախախնամական դեր մը կատարած է Կեսարիոյ և շրջակայից համար։

Այս հիւանդանոցին գրեթէ յարակից են ամերիկեան միսիոնարներու շէնքերը շքեղ, աղջիկներու գիշերօթիկ ճեմարանը, և մանչերու նախակրթարանը։ Կեսարիոյ միսիոնարները Թալասի մէջ 1897ին հաստատած էին Որբանոց մը, նպաստովը գերման բարերարի մը որ 50–60 որբ խնամելու հարկաւոր դրամը դրած էր իրենց տրամադրութեան տակ (Բիւզանդիոն, թ. 141)։ Ամերիկացիները տեսնելով որ որբանոցին մէջ գիշերօթիկ թոշակաւոր տղաքներ ընդունելու խնդրանք կայ, Ամերիկայի մէջ նպաստահաւաքութեամբ կը ձեռնարկեն Գոլէճ մը կանգնելու և այս նպատակով 1904ին կը գնեն Կիւլպէնկեաններու բարձրադիր այգին և հոն կը կանգնեն Գոլէճը մի քանի տարի յետոյ։ Թալասի մէջ գործող Ամերիկացի միսիոնարներու մէջ ամէնէն գլխաւոր դէմքն էր Մր. Ֆառըլ որ 1870ական թուականներէն սկսեալ 30-35 տարի անընդհատ Թալաս մնացած է։

Քաղաքին երկու կարեւոր մասերը, Վարի և Վերի թաղերը իրարու միացած են խիստ զառիվեր և անդունդով մը եզերուած երկու ճամբաներով, որոնցմէ մէկը «Գարաման Պայրրը» կը կոչուի։ Այս ճամբան ունի ստրճանաւոր սալայատակ և անդունդին կողմը պատ ապահովութեան համար, և շինուած է Գարամանեան ընտանիքի կողմէն, որմէ առած է իր անունը։

3. ՊԷՔՃԻԼԻՔ
4. ԹԱՊԼԱ ԴԱՑԵԱ

} թաղերը կը գտնուին քաղաքին հիւսիսային կողմը չունին այն կարեւորութիւնը որ ունին Վարի և Վերի թաղերը։

5. ՔԸՉԻ ՔԷՕՅ կամ Բրչ քէօյ որ ոմանք Բիւչիւ քէօյ ձեւով ալ պահուած ցոյց կու տան աղաւաղումն է Բիւչիւք քէօյ բացատրութեան (տես Ֆէլէք, Ա. Տարի, 1882, էջ 90. Աշոտ քհնյ. Երկաթ, նոյն, 360)։ Աւանին «ամենէն անշուք եւ ընդհանրապէս Թուրքերով բնակուած մասն է: Գլխաւոր ուանէն բաժնուած՝ պարտէզներով, իր անշքութիւնը ծածկած է լերկ բլրակի մը ետին» (Եղիազարեան)։ Այնպէս որ ոմանք, ինչպէս Վտարանդին (ՄԱՍԻՍ. թ. 3848) Թալասէն 10 վայրկեան հեռու զատ գիւղ մը նկատած են այս թաղը, սակայն ուրիշներ, ինչպէս Յովհաննէս Գալըգճեան, Եղիազարեան, Աշոտ քհ. Երկաթ զայն կը նկատեն մասը Թալասի և անոր մէկ թաղը։

Քիչի Քէօյ ունէր ըստ «Վտարանդի»ի 250 և ըստ Եղիազարեանի 300 տուն բնակիչ։ 1913ին անիկա ունէր միայն 120 տուն եռազգի բնակչութիւն, որուն 30 տուն հայութենէն միայն 3 տուն մնացած էր (Աշոտ քհնյ. Երկաթ, նոյն)։ Եղիազարեան ալ կը հաստատէ թէ կէս դար առաջ հազիւ հարիւրեակ մը, իսկ ընդհանուր պատերազմի վաղորեակին, հազիւ քանի մը տասնեակ Հայ բնակչութիւն ունէր ան։

Հաւանական է մտածել թէ թրքական այս թաղամասին Հայ բնակչութիւնը մանաւանդ 1895 – 1896 թուականներէն յետոյ հետզհետէ փոխադրուած է Թալասի Վարի և Վերի թաղերը և այդ թաղամասը բոլորովին դատարկացուցած՝ այնպէս որ 3 տունի իջած էր իրենց թիւը։ Նոյնը պատահած էր նաև այդ թաղամասին Յոյներուն, որոնք 1913ին 6 տուն մնացած էին, իբր անցեալի յիշատակ ունենալով փառաւոր եկեղեցի մը։

Ունէր եկեղեցի մը Ս. Ստեփանոս անունով, նախապէս փորուած



քիւսէ (Քէվէք բաշը) լերան մը մէջ (Ֆէլէք, 1882, էջ 91), որ 1882ին ի նորոյ կառուցուած է(1) (Վտարանդի, ՄԱՍԻՍ, թ. 3848)։

Թաղին դատարկանալուն հետեւանօք Քիւչիւ քէօյի եկեղեցիին թանկարժէք անօթները փոխադրուած էին Թալասի Վերի և Վարի եկեղեցիները (Աշոտ քհնյ. Երկաթ, նոյն)։

Քիչի Քէօյի Ս. Ստեփանոս եկեղեցին ալ իրեն կից ունէր համեստ նախակրթարան մը ուր 1872ին կը յաճախէին 80 (Համար. Ազգ. Կեդր. վարչ. 1872–1873) և 1882–1886ին 60 աշակերտներ (Վտարանդին, Մասիս, թ. 3848 և Ֆէլէք, 91)։ Ինչպէս գիւղը նոյնպէս նաև իրենց վարժարանը — որ կը կոչուէր Ստեփանոսեան — կ'անշքանար հետզհետէ։ 1901ին ան ունէր միայն 10 մանչ և 10 աղջիկ աշակերտ և ամսական 30 ղրշ.ի ծախք։ Սակայն ի վերջոյ ան ալ փակուած է։

ՀԱՅԵՐԸ ԹԱԼԱՍԻ ՄԷՋ.

Թալաս ե՞րբ հայաբնակ եղած ըլլալուն որոշ և հաստատուն փաստ մը չունիմ։ Սակայն կը կարծեմ թէ Թալաս, որ գրեթէ արուարձան մըն է Կեսարիոյ, իր արդի վերաշինութիւնը, հին քաղաքի մը վայրին վրայ, կը պարտի Հայերուն և շատ հին ծագում չունի, այլ հազիւ 300 տարիներու։

Պ. Խաչիկ Գ. Լեւոնեան (տես Բիւզանդիոն, 1900 Դեկտ. 27, թ. 1277) կասկած կը յայտնէ թէ երբեմն Խիզանի գաւառակին Բաղենց գիւղէն Աղթամարի վանքը բերուած և 1018 թուականին գրուած Աւետարանին գրչութեան վայրը, որ էր՝ «ի գաւառին Կղաւտոյ (կամ թերեւս ի գաւառիկ Ղաւտոյ) ի վանս ՏԱԼԱՇԱ», կեսարական Թալաս գիւղաքաղաքն է։ Եթէ ճիշտ ըլլար այս տեսութիւնը Թալաս Հայաբնակ եղած կ'ըլլար ԺԱ. դարուն սկիզբէն և հնագոյն մեզի հասած հայկական ձեռագիրը որ Արգէոսի շրջանակին մէջ գրուած է, հոն գրուած կ'ըլլար։ Սակայն ասիկա հաւատալի չէ և կը թուի չափազանց կասկածելի։

Եթէ նոյնիսկ այդ Տալաշան՝ Թալասն է, պէտք է ըսել թէ 1073-74ին Կեսարիոյ հետ Թալաս հիմնայատակ եղած է և երկար ատեն այդ վիճակին մէջ մնացած։ Նոյնիսկ պիտի ըսեմ թէ Ճէլալիներու արշաւանքէն յետոյ տակաւին Թալաս անունով տեղ մը կամ գիւղ մը գոյութիւն չունէր։ Այս տեսութիւնը կ'արդարանայ երբ ուշադրութեան առնենք սա պարագան թէ Սիմէոն Դպիր Լեհացի որ 1618ին այցելած է Կեսարիա և քաղաքին ու շրջակայից վրայ այնքան շահեկան տեղեկութիւններ տուած, և անոր կարեւոր գիւղերուն, ինչպէս նաև Երկոռեակ Լերան կամ Ալի Տաղի վրայ խօսած, անոր ստորոտը գտնուող Թալասին վրայ մէկ բառ չէ ըսած։

Անիկա կ'ըսէ թէ «Հուպ Արճիշու երկորեակ լեառն, զոր ԱԼԻ ՏԱՂ կոչեն, բայց շատ փոքր է քան զԱրճիշան. կայ եւ անդ եկեղեցի մի Աստուածածին անուն, անդ կան եւ զէնքն Մեռկեռիոսի՝ յորժամ հրամայեց Մեռկերիոս՝ թէ երթ եւ սպան զհայհոյիչն որդոյ իմոյ, որով եւ սպան զպիղծն Ուլիանոս. եթէ

(1) Վտարանդին կ'ըսէ թէ հոն կար երկու եկեղեցի, մին շինուած 1845ին (անանուն) և միւսը 1882ին, որով կը թուի թէ 1845ին շինուածը՝ նախկին եկեղեցին է որուն տեղը պէտք է երկրորդը շինուած ըլլայ 1882ին։

կամիս գիտ եւ կարդա Յայսմաւուրքն սուրբ Բարսղի: Կայր անդ եւ սրբոյն քրոջն Բարսղի գերեզմանն» (ՀԱ. 1935, էջ 92)։ *Շատ դիտելի է որ այս եկեղեցին ոչ եւս էր սակայն անոր յիշատակը մինչեւ վերջը կը պահպանուէր: Հոն կային վերջերը երկու աւերակ մատուռներ, մէկը Հայոց և միւսը Յունաց սեփական։ Աստուածածնայ տօնին, հոն պատարագ կը մատուցուէր և մատաղաբաշխութիւն կը կատարուէր։ Ամբողջ ժողովուրդը հոն կ'անցնէր գիշեր մը։ Այդ գիշերը սովորութիւն էր այս լեռան գագաթը կազմուած ընդարձակ լեռնադաշտին ծայրերը ջահեր վառել որպէսզի ամէն կողմէն տեսնուին։ Թուրքերը ասոր կ'ըսէին* «Զրրա Եանըմը» *և բոլոր այգեգործ Թուրքերը անոր կ'սպասէին, վասնզի խաղողօրհնէնքը գիտէին թէ այդ օրը կը կատարուէր և քրիստոնեայք այն օրէն յետոյ կ'ուտէին խաղող։ Այս տօնակատարութեան մասնակից Հայերը հետեւեալ օրը կ'երթային Տէրէ վանք և Յոյները Զինճի տէրէի իրենց վանքը (Գ. Գ. Մարթաեանի տեղեկութիւն)։ Թալասի ժողովուրդին մէջ այսքան տեղ բռնած ուխտավայր մը, որ տակաւին չէն էր Սիմէոն Դպիր Լեհացի չի յիշեր իր ծխականներով, ուստի կը կասկածիմ որ Թալասի հիմնարկութիւնը կամ հոն Հայոց հաստատութիւնը այդ թուականէն գրեթէ անմիջապէս յետոյ պատահած ըլլայ, վասնզի —ինչպէս ըսի— 1659ին գրուած է Տօնացոյց մը* «ի գիւղն Թալաս, ընդ հովանեաւ Ս. Թորոսի, ձեռամբ... Յովանն քհ.ի (1)»։ *Ուրեմն ԺԷ. դարուն կիսուն Հայերը հոն ունէին գաղութ մը և եկեղեցի մը իր քահանայով։*

*Թալաս, ինչպէս տեսնուեցաւ շատ կարեւոր մասամբ հայկական հիմնարկութիւնն էր և անոր ծաւալումին և բարգաւաճման մէջ մեծ դեր ունեցած էին Հայերը, ինչպէս փողոցներուն և թաղամասերուն անունները ցոյց կուտային:*

ՀԱՅԵՐԸ ԻԲՐ ԿՐՕՆԱԿԱՆ ՀԱՄԱՅՆՔ.

*Թալասի Հայերը միշտ ենթակայ եղած են Կեսարիոյ Հայ առաջնորդարաններուն, և գրեթէ հեռու մնացած են կրօնական վէճերէ, միայն բողոքականութիւնը կրցած էր իրեն համար տկար կառուան մը գտնել և իրեն հետեւողներ ունենալ։ Ասոր նպաստած են Ամերիկեան հաստատութիւնները։*

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

*Թալասի Հայերը, ԺԹ. դարուն ընթացքին իրենց նկարագիրը փոխած ըլլալ կը թուին։*

*Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան այդ դարուն սկիզբը անոնց վրայ խօսելով կ'ըսէ.* «որք կոռովիք, լօշասիրք եւ յաջողակք ի զէնս հրոյ եւ սրոյ, որք համբաւեալ են յայն կողմանս, մինչեւ աւազակաց իսկ երկնչիլ, յորժամ ի ճանապարհորդս կամ ի կառաւանս յանեն յինել զօք ի Թալասցոց» (Աշխարհագրութիւն, Ա. 314)։

*Այս քաջարի մարդոց սերունդը հետզհետէ կերպարանափոխ եղած է և գրացի Կեսարիոյ օրինակին հետեւելով դարձած է առեւտրականներու հաւաքոյթ մը, որ այլեւս մոռցած է իր զէնք գործածելու վարժութիւնը, կանգուն դարձնելու ունակութիւնը ստանալով։*

*Կեսարիոյ շրջանակին մէջ, ինչպէս ամէն գիւղեր, նոյնպէս նաև Թալաս մշակելի հողերէ զուրկ, հացահիւթերը անգամ դուրսէն կ'ստանար, ուստի Թալասցիք իրենց օրապահիկը հայթայթելու համար ստիպուած են թափառիլ օտար քաղաքներ։*

*ԺԹ. դարուն մէջ արդէն կը տեսնենք որ Թալասի ընդհանուր բնակչութիւնը, մասնաւորապէս Հայերը, ամենամեծ մասամբ առեւ-*



ԹԱԼԱՍԻ ԽՈՒՊԷՍԷՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ 1914Ի ՎԵՐՋԻՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ

Շրջանակին մէջ բարերարին նկարը: Ոտքի վրայ կեցողները ձախէն աջ 1. Յակոբ (Թոռ Էպէ Մաուչի), 2. Յեսիան Քէլէշեան, 3. Գրիգոր Թօմարզալըեան, 4. Յակոբ Ասանալեան, 5. Հմայեակ Օզանեան, 6. Օննիկ Էրզրումլեան, իսկ նստողները ձախէն աջ 7. Տէտէ Թորոս (Տնտես) 8. Սարգիս Պէյլէրեան (Ուսուցիչ), 9. Բարսեղ Տէր Բարսեղեան (Տնօրէն), 10. Հաճի Սիմոն (Ուսուցիչ):

Ամէնքն ալ տարագրութեան մէջ կորսուած բացի թիւ 5էն, որ այժմ Մարսիլիա է:

*տրականներ են, և իբր վաճառական յարաբերութեան մէջ մտած են Ռուսիոյ, Պարսկաստանի, Կարինի, Սեբաստիոյ, Ատանայի և Իզմիրի հետ և խոշոր առեւտուր կ'ընեն։ Այս առիթով ալ Կ. Պոլսոյ և Եւրոպայի հետ առընչութիւններ կ'ունենան և Թալասի անձուկ մթնոլորտին մէջ չկարենալով ապրիլ չորս կողմ կը ցրուին, և գլխաւորապէս Իզմիր ու Կ. Պոլիս կը գաղթեն ընտանեօք և սմանք ալ նոյնիսկ Եւրոպա կը փոխադրուին։*

―――――

(1) *Այս քահանային սերունդը շատ հաւանօրէն յաջորդաբար շարունակած է քահանայագործել 'ի Թալաս, վասնզի 1727ին գրուած Մաշտոցի մը մէջ կը յիշուի «Թալասցի Տէր Կարապետի որդի Տէր Յակոբ քահանայն... և զմեծ պապն իւր Տէր Յովան քահանայն» որ ապահովաբար 1659ի յիշուած Տ. Յովանն է։*

Այս գաղթին նպաստած է Թալասի մէջ ապրուստ հայթայթելու չափ առեւտուր չըլլալը։ Անկէ առաջ եկած էր տնտեսական աննըպաստ կացութիւն մը, որ մղած էր բնակչութիւնը պանդխտութեան և գաղթականութեան։

Նախ քան Համիտեան ռէժիմ, Թալասի Հայերը առաւելապէս գաղթած են Կ. Պոլիս և Իզմիր։ Համիտեան շրջանին երբ դժուարութիւններ կը հանուէին Կ. Պոլիս երթեւեկի, Թալասցիք — որոնց մէջ կային վարժապետէն մինչև յետին գործաւորը — ամէն գարնան Ատանա կը չուէին իբր պանդուխտ։

Անոնք տարուան 8-9 ամիսները հոն կ'անցնէին ու ամառը կը վերադառնային։ Թէև անոնք գոհացուցիչ գումարներ չէին կրնար դիզել, սակայն բոլորովին ալ անօգուտ կերպով չէր որ կը պանդըխտէին։ Այսպէս 100ին 80ը այրերուն պանդխտութեան մէջ կը տուայտէին և ոմանք ընտանեօք կը գաղթէին։ Այնպէս որ չքեղ ու ճաշակաւոր տուներու մէջ ամայութիւն կը տիրէր։ Հայոց թիւը 1500 տունէն 1000 տունի իջած էր և շատ կու գային իր հոյաշէն եկեղեցիները։

Այս հիւծող աւանին մէջ նախախնամական եղած է գորգագործութեան մուտքը ԺԹ. դարուն վերջը։ Շատ մը ընտանիքներ իրենց ապրուստը կը հայթայթէին իրենց աղջիկ զաւակներուն ձեռքի աշխատանքով (հմմտ. Կ. Կ. Տէվէլեան, Սուրհանդակ, թ. 843, 3 Դեկտ. 1901)։ Դժբախտաբար այս վաստակը իրեն հետ ունէր նաև կարգ մը անպատեհութիւններ և ժխտական արդիւնքներ։

«Թալասի կիները եւ աղջիկները լաւ կը ճանէին գորգագործութենէ կամ ճիճիմէ, սակայն անոնք վարակուած էին պճնասիրութենէ, «շաքար նոր, արդուզարդ նոր»: Նոյնիսկ ծրի դաստիարակութեան մը բազմազան օգուտները մերժելով հանդերձ, ընտանիքնին խնամելու պատրուակեալ համեստ քօղին տակ սքօղուած, ամէն պարագայի մէջ, սիրելի պարզութիւնը անոնցի պերճանքին հետ փոխելու տկարութիւնը կը ցուցնեն: Ամէն անգամ որ Թալասի նիւթապէս խիստ անձուկ դասակարգի մը ընտանեաց ոեւէ մէկ անդամին իր նիւթական եւ ընտանեկան վիճակին բոլորովին անհամապատասխան արդուզարդի մը բոլոր ուժով փափաքը տեսնելու դժբախտութիւնը կ'ունենամ, առաջին մտածումս՝ թերի կրթութեան մը աւաղելի պարագաներուն վրայ կը կեդրոնանայ, քանի որ այն օրիորդներն որ, իրենց ամուսնութեան համար քանի մը ձեռք հագուստ եւ զարդեղէններ հայթայթելու խէթալով դպրոցական գրասեղանները շատ կանուխէն գորգի սեղաններու հետ յօժարակամ կը փոխանակեն, ուսման ու կրթութեան պակասը տարիքն ու հասակը կորսնցնելէ զատ, թեզգեահներու առջեւ իրենց առած աննպաստ դիրքին հետեւանք ֆիզիքական կազմն ու առողջութիւնն ալ յաճախ վրայ կու տան: Ասոր փոխարէն շատ շատ ժամանակ մը իրենց ընտանեաց չնչին նպաստ մը ընելու կը յաջողին: Շատերն ալ, քանի մը տարի միայն իրենց պարանոցին վրայ զարդոսկիները շողացնելէ ետք՝ բժշկին իբր այցեգին վճարելու կը հարկադրուին» (Խ. Կ. Մկրտիչեան, Սուրհանդակ, թ. 874, 8. Յունուար, 1902)։

Գալով Թալասցիներու կեանքին ու կենցաղին, հակառակ անոր որ անոնք այնքան մօտը՝ գրեթէ Կեսարիոյ մէկ արուարձանին մէջ, կ'ապրին, հետաքրքրական է «Կեսարացիներու եւ Թալասցիներու իրարու հանդէպ փոխադարձ արհամարհական վերաբերումը, որ քաղաքացիներուն ըսել կու տայ թէ Թալասցիք անտաշ են եւ Թալասցիներուն՝ թէ Կեսարացիները ան-



պէտ են ու ամէն տեղ յաւագոյն Կեսարացիներէ Թալասցիներն եղած են միշտ...: Թալասցի մը, զոր իբր Կեսարացի կը ներկացնեն, տասնին վրայ ինը անգամ կ'ուղղէ այդ սխալը, այդ մասին քիչ մը նման էվէրէկցիին, մինչ Էֆքէրէցին, Մունճուսընցին, Մանճրսընցին, Թաւլուսընցին եւն. եւն. այդ փութկոտութիւնը ցոյց չեն տար բնաւ...» (Վ. Թէքէեան, Ժողովուրդի Ձայն, թ. 830)։

Թերեւս այս «արհամարհական վերաբերում»ն է որ տուն տուած է Վտարանդիի (Մասիս, թ. 3848), գրելու Թալասի Հայոց համար անիրաւ կերպով թէ «ուսումնասէր եւ ազգասէր չեն, գրականութեան եւ լրագրութեան սէր չունին, եւ բնաւ ոեւէ ազգային հարց չհետաքրքրեր զիրենք»: Իրողութիւնը սակայն կարծես թէ հակառակը կը հաստատէ, վասնզի Թալասի Հայերը ինչպէս կը տեսնուի կրթական գործին կարեւորութիւն տուած էին նոյնիսկ Վտարանդիի վկայութեամբ, քանի որ ունէին կանոնաւոր վարժարաններ։ Նոյնիսկ Հայերու մէջ կանոնաւոր դպրոցական դաստիարակութեան մը սկզբնաւորութենէն ոչ շատ ուշ, Թալաս ունեցած է իր վարժարանը — անշուշտ շատ նախնական — ինչպէս կը հաստատեն 1834 և 1845 թուականով երկու վիճակագրութիւններ։

Անուսումնասէր մեղադրուած Թալասցի պանդուխտ ազգայիններ 1848ին Կ. Պոլսոյ մէջ կը կազմեն Մամիկոնեան Ընկերութիւնը նպաստելու համար նոյն տարին Կիւլպէնկեանց բարերարութեամբ կառուցուած Վարդ-Պատրիկեան վարժարանին, որ շնորհիւ այս Ընկերութեան նպաստին 1848էն մինչև 1876–77 բաւական փայլուն վիճակ մը ունեցած է, սակայն այս կրթական ընկերութեան դրամագլուխը — որ թրքական արժեթուղթերու վերածուած էր — փճացաւ երբ Թուրքիա սնանկացաւ, 1880ին Վարդ-Պատրիկեան վարժարանը այս պատճառով խանգարուեցաւ։ Սակայն Պոլսեբնակ Թալասցիները 1881ին միանալով, դպրոցին մատակարարութիւնը իրենք ստանձնեցին և իրենց ծրագիրին համեմատ ուսուցիչներն ալ իրենք ղրկեցին, որով վարժարանը ստացաւ բարեկարգ վիճակ։

Դարձեալ վարի թաղի Արշակունեան վարժարանը կը մատակարարուէր համանուն ընկերութեան կողմէ, որ կազմուած էր 1850ին (Ֆէյէֆ, 1882, էջ 91), մինչև որ Մամիկոնեան ընկերութեան նման այս ընկերութեան ալ դրամագլուխը փճացաւ օսմ. արժեթուղթերու արժէքազրկման հետեւանօք։

Ինչպէս կը տեսնուի Թալասցիք կրթական գործին անփոյթ չեն եղած, սակայն, ինչպէս քաղաքացիք, իրենք եւս թրքախօս էին։ Բարեսիրական զգացմամբ ալ Թալասցիք ոչինչով կը տարբերին Կեսարացիներէն։ Թալասցի բարերարներուն նպաստով կառուցուած եկեղեցիները և դպրոցները անոր փաստն են։ Իրենց նշանակելի նուիրատուութեամբ համբաւուած Թալասցիներ նուազ չեն եղած։ Թերեւս պիտի ըսեմ թէ իրենց շնորհելու ձեւին մէջ աւելի ազնուականութիւն կայ և աւելի լայնմտութիւն։ 1874ին երբ Կեսարիա անձկութեան օրեր կ'ապրէր, Կ. Պոլիս գտնուող Թալասցիք կարեւոր գումար մը կը հանգանակեն և կը ղրկեն իրենց ծննդավայրը ուր այդ գումարը բաժնել կու տան Հայ, Յոյն և Թուրք կարօտեալներու անխտիր (Փունչ, թ. 936)։

Թալասցի մը՝ Թալասի վրայ խօսելով ըսած է թէ «գաւառներու մէջ Թալաս պզտիկ Բարիզ է, հոն երեւցող նուրբ ճաշակներով ու ժամանակին

կապկութիւններովը. հարուստէն մինչեւ սնանկը իր հագուստն ու կապուտը եւրոպական քաղաքներէ բերուած նմոյշներուն ու ձեւերուն համեմատ եւրոպականացնելու ճիգ մը կայ Թալասցի կնոջ քով, իսկ Կեսարացի կինը, եւ այլուր կիներ, սկսած են անոնց հետեւիլ, հոն Եւայի նազելի քոյրերը փափկանկատ ձեւերու մէջ առաջնութիւնը իւրացուցած են, հոս ճիգ մը կայ նմանողաբար անոնց հասնելու յաջողելու: Բայց պիտի գոհանաք երբ ըսեմ թէ, ուրիշներու այս արտաքին պերճանքին համապատասխան հոգեկան զարգացումն ալ օրէ օր մղում կ'առնէ» (*Կ. Կ. Տէվէլեան*, Սուրհանդակ, *թ.* 591)։

*Իսկ ոչ Թալասցիի մը դատողութիւնները Թալասցիներուն մասին*



Բարսեղ Բենիամին Վարդուհի Սրբուհի

**ԽԱՆԼԵԱՆՆԵՐ**

**ԹԱԼԱՍԻ ՀԱՅՈՑ ՏԱՐԱԶԸ ԿԷՍ ԴԱՐ ԱՌԱՋ**

(Սրբուհի Խանլեան մօրաքոյրն է Հանգ. Պասքիկ Կիւլպէնկեանի)

*սա է որ* «Թալասցի այրը ապետական ընթացք ունի իր կնոջ եւ զաւակներուն հանդէպ. ծածկամիտ է իր սիրոյ արտայայտութեանց, ինչպէս նաեւ իր առեւտրական եւ ընկերական յարաբերութեանց մէջ: Տեսակ մը բնական հպարտութիւն յատկանիշն է Թալասի Հայերուն: Կ'արհամարհեն փոքր յաջողութիւնները, եւ կը սիրեն յանդուգն ձեռնարկներու մէջ փորձել իրենց բախտը: Եւ արդարեւ շատեր յաջողած են. Պալեօզեաններ, Եասայեաններ, Սէյրանեաններ, Քիւփէլեաններ, Կիւլպէնկեաններ, Սայապալեաններ, Խուպէսէրեաններ, Թալասցի են:

Թալասցին սակաւախօս է, աւելի մտքով քան լեզուով բեղմնաւոր է: Աւելի քան Կեսարացին համեստ է իր խօսումներուն մէջ եւ վստահելի, բայց նուազ քաղաքավար ու կենցաղագէտ քան զայն:

Թալասցին նաեւ աւելի անձնատէր է, նուազ թեթեւաշարժ, բայց նաեւ վեհանձն շատ աւելի քան Կեսարացին:

Թալասցիք քաղաքավարութիւնը կեղծաւորութիւն կը համարեն. ահա թէ ինչպէս իրենց բնական հպարտութիւնը չուզեր խոնարհիլ քաղաքավարութեան առջեւ: Թալասցին անտարբեր է երաժշտութեան. հակառակ այն իրողութեան, թէ Թալաս բանաստեղծական դիրք մը ունի Թալասցին չունի սակայն բանաստեղծական նկարագիր, բնական տեսարաններու հանդէպ ըլլայ, թէ մարդկային կեանքի երեւոյթներու առաջ: Կեսարացիին բերնի ծամոնցն է կրկնել միշտ *«իշտէն արթմազ, տիշտէն արթար»*։ Այս ձեւով ըսել կ'ուզէ թէ խնայողութեամբ միայն կարելի է դրամ շինել, ու կը խնայէ, շարունակ կը խնայէ յաճախ ինքնազրկումի գինով: Թալասցիին համար այդ առածը նշանակութիւն չունի, կը ծախսէ լիաբուռն երբ ունի. *«դրամը կլոր շինուած է գլորուելու համար»* կ'ըսէ ան կամ *«առանց ծախսելու փողը ձեռք չանցնիր մեծը»* կը կրկնէ: Այս մտայնութենէն տարուելով է որ կը սիրեն յանդուգն ձեռնարկներու մէջ փորձել իրենց բնազդը, մինչդեռ Կեսարիա միշտ առեւտրականներ արտադրած է:

Կը ճանչնամ Թալասցի տիկին մը, տգէտ ու միջակ ծագումով: Հաւաքոյթի մը մէջ ծանրագլուխ նկատուած Կեսարացի տիկին մը ակնարկելով անոր վեցերորդ ու վերջին զաւկին որ հիւանդոտ աղջնակ մըն էր, յայտնեց թէ լաւ այն էր որ այդ տղեկը մեռնէր եւ մայրը հանգստանար: — Եթէ մեռնի իր հանգիստն է, եթէ ապրի իմ հաճոյքս է, թող բարին ըլլայ, պատասխանեց Թալասցի տիկինը սառնօրէն:

Թալասցին կ'արհամարհէ միջակութիւնը այնքան որքան աղքատութիւնը, ահա թէ ինչո՞ւ մեծ մասամբ հարուստ են կամ աղքատ: Հազիւ թէ միջակ դիրքի տէր Թալասցիի կարելի է հանդիպիլ: Կեսարացիին համար միջակութիւնը բան մըն է, իսկ հարստութիւնը շնորհք մը, որուն տիրանալու համար նախախնամութեան օգնութիւնը կ'սպասէ քան իր ջանքերէն: Կեսարացին ունի յարգանքի ու համակերպութեան ոգի ու իբր այն կը հպատակի իր մեծերուն կամքին ու կը յարգէ անոնց թելադրութիւնը: Թալասցիին էսը ինքնիշխան է. հնազանդութիւն չի գիտեր ու մեծերու հանդէպ յարգանքի սովորութիւնը շատ թեթեւ է Թալասի մէջ. կ'ըսեն թէ իրենց ազնուապետական սովորութիւնն է հինէն մնացած:

Թալասցի կինը նկարագրով աւելի կորովի է. վշտերու առջեւ աւելի առնական կեցուածք ունի. նուազ զգայուն չէ իր մայրական զգացումներուն մէջ, բայց նուազ խանդոտ է զայն արտայայտելու մէջ: Հոն ուր Կեսարացի կինը պիտի լար, Թալասցի կինը...» (*Եղիազարեանի ձեռագիր, այսպէս ընդհատ մնացած*)։

*Թալասցի Հայ կիները նկատուած են ճարպիկ եւ խնայող եւ չափազանց հիւրասէր: Շատ տուներու մէջ կան հիւրի յատուկ սենեակներ, որոնք պարծանք ու պատիւ կը նկատուին:*

*Կիներու կողմէ երիկ մարդոց ընծայուած յարգանքը չափազանցուած է այնպէս որ Թալասցի պառաւ կինը փողոցի դրան քով քարին վրայ նստած բուրդ մանած ատեն փողոցէն անցնող 20 տարե-*

կան պատանիի մը ոտքի վրայ ելլալով մեծարել և բարեւել իրեն համար նուիրական պարտականութիւն և քաղաքավարութիւն կը նկատէր։

## ԱՐԵԱՆ ՏՈՒՐՔ.

*Թալաս Համիտեան շրջանին,* «տուած է իր բաժինը կախաղանին, սուրին, աքսորին ու բանտին: Իրաւ է թէ շէնքերը չհրկիզուեցան յայտնի ձեռքերով, բայց մահահոտ սպառնալիք եւ տնտեսական տագնապ ներքնապէս փճացուցին Թալասի կեանքը, հարկադրելով Հայ բնակչութեան կարեւոր մասը որ թողու ամէն ինչ, հայրենիք, ընտանիք, տուն-տեղ, քրտինքի արդիւնքով բարձրացած մեծակառոյց շէնքեր:

Ասոնցմէ կան որ չնչին գիներով անցած են հարեւաններու ձեռք, մշակուած այգիներ ու պարտէզներ յանձնուած անոնց պահպանութեան՝ համազօր ... սեփականատիրութեան: Եթէ Ամերիկեան Հիւանդանոցն ու նորաշէն Գոլէճը — կրկին պսակներ Թալասի գլխուն — չբերէին իրենց օրհնութիւնը, չհսկէին աւելի բարձրէն եւ ապաւէն չըլլային հիւանդաց ու ուսումնատենչ Հայորդիներու, Թալաս այսօր աւերակ մըն էր անկասկած» (*Աշոտ քհ. Երկաթ*, Ամէնուն Տարեցոյց, 1923, *էջ* 362–363)։

*Խեղճ միամիտ քահանան որ այս տողերը գրի առած էր 20 Օգոստոս 1913ին, երազի այդ օրերուն մէջ անոնց կը կցէր սա խորհրդածութիւնները։*

«Կ'սպասուի որ ապահովուի կեանքը, գործադրուին ծրագրուած բարենորոգումները, հաւասարութիւն եւ արդարութիւն տիրեն, հաղորդակցութիւնը դիւրի, եւրոպացի պաշտօնեայք յաճախեն, որպէսզի Թալաս գտնէ իր նախկին մեծապանծ շքեղութիւնը, գրկելով իր զաւակները իր ծոցին մէջ»:

*Թէ ինչպէս պսակուեցաւ ակնկալութիւնը խեղճ հոգեւոր պաշտօնեային, լաւ էր որ չխօսինք անոր վրայ։ Այդ դժբախտ քահանան զոհ մը ինքն ալ թրքական բարբարոսութեան, տեսաւ վերջնական և արմատական աւերումը այս շէն ու բարգաւաճ աւանին, այն նշանաւոր սպանդին պահուն որուն զոհն եղաւ ամբողջ Ասիական Թուրքիոյ Հայ բնակչութիւնը։*

1915 *Յունիսի սկիզբը կը ձերբակալուին Թալասի* 22 *երեւելիները որոնք մէկ ամիս բանտի չարչարանք կրելէ վերջ՝ Յուլիս 2ին շղթայակապ կ'աքսորուին, միահաղոյն նահատակուելով Կէմէրէկէն քիչ հեռու ամայի վայր մը։*

*Այս երեւելիներն էին,* 1. *ուսուցիչ Գրիգոր Ալչըճեան,* 2. *դեղագործ Ստեփան Եազըճեան,* 3. *և* 4. *փաստաբան Արսէն և Մատթէոս Գալֆաեան եղբարք,* 5. *Թալասի հրաժարեցուցուած «միւտիր» Հայկ,* 6. *և* 7. *լուսանկարիչ Սարգիս և Յարութիւն Ստեփանեան,* 8. *վաճառականք Արիստակէս Խորխոռունի,* 9. 10. *Սարգիս և Կարապետ Էօմիւրեան,* 11. *Տիգրան Սէլեան,* 12. *Աբրահամ Սայապալեան,* 13. *Լութֆիկ Սվաճեան,* 14. *բողոքական պարոն Փօղոս,* 15. *Ճէպրայիլ Քէօրհաճեան,* 16. *Ասատուր Տատըրեան եւայլն։*

*Ասոնց ջարդը կատարած էին Թալասի «միւտիր» Սատըգ, տասնապետ Մէհմէտ եւայլն։*

*Սակայն ասիկա սկիզբն էր երկանց։ Թալասի մնացորդ հայութիւնն ալ պէտք էր բնաջնջել։*

*Կեսարիոյ հայ գիւղերը քշուած էին արդէն, երբ* 1915 *Յուլիսի*



*վերջերը տեղական կառավարութիւնը Թալասի և Կեսարիոյ մէջ կը հրատարակէ յայտարարութիւն մը, որուն համաձայն*

1. *Բոլոր Հայերը պարտաւոր են մեկնելու հազարական հոգինոց կարաւաններով։ Այրերը զատ պիտի երթան ուրիշ ուղղութեամբ, իսկ կիները տարբեր ճամբով։*

2. *Ոչ մէկը* 200 *ղրշ.էն աւելի դրամ չի կրնար առնել հետը, և եթէ երբեք, յետ խուզարկութեան, աւելի դրամ գտնուի, ունեցողը պիտի դատուի պատերազմական ատեանին առջեւ։*

3. *Ոչ մէկը իրաւունք չունի ծախելու իր ինչքերը։ Ան որ դրամ չունի, կրնայ* 300 *ղրշ.ի չափ ծախել իր ինչքերը* (*Սեպուհ Ակունի*, Միլիոն մը Հայերու ջարդի ամբողջական պատմութիւնը, 1914–1918. *Կ. Պոլիս* 1921 *էջ* 192)։

*Եւ կ'սկսի տարագրութիւնը քանի մը կարաւանով։ Մի միայն* 25 *տուն զերծ կը կացուցուին աքսորէ և* 15 *տուն զինուորի ընտանիքներ ալ կը ցրուուին մերձակայ Թուրք գիւղերը։*

*Թալասի մէջ կը պաշտօնավարէր այդ միջոցին իբր ուսուցիչ դաշնակցական գործիչ Դաւմէն (կարգալոյծ էջմիածնի միաբան Տաճատ վրդ. Մելքոնեան), որ այս կարաւաններով տարագրուեցաւ Հալէպ և սպաննուեցաւ անկէ անդին։*

*Տարագրութեան ճամբուն վրայ նահատակուած են նաեւ Վերի Թաղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ քահանաներէն Գարեգին Աքհ. Սէֆէրեան*(1) *և Յակոբ քհ. Այվազեան*(2) *և Վարի Թաղի Ս. Երրորդութիւն եկեղեցիին քահանաներէն Հմայեակ քհ. Տէր Բարսեղեան*(3)։

*Տարագրութեան մէջ կը մեռնի նաեւ պատ. Մեսիա մհտ. Դաւիթեան*(4), *իսկ սարսափի օրերուն տկարութեան վայրկեանի մը խուլա-*

---

(1) *Ծնած է* 7 *Մայիս* 1868*ին Կէմէրէկ, աշխարհական անունով Իսկէնտէր, ուսած իր ծննդավայրին և Թալասի Վարդ–Պատրիկեան վարժարաններու մէջ։ Յետոյ ուսուցիչ եղած է զանազան գիւղեր։* 1895*ին և* 1896*ին երկու անգամ կը բանտարկուի իբր քաղաքական յանցաւոր։*

14 *Մայիս* 1898*ին ձեռնադրուած է քահանայ Ս. Դանիէլի(ի)վանահայր Ստեփանոս եպ. Սանտալճեանէ, Կէմէրէկի Ս. Աստուածածին եկեղեցիին վրայ, ուր* 13 *տարի քահանայագործելէ վերջ՝ Թալաս փոխադրուած էր։ Նահատակուած է Եղեսիոյ ճամբուն վրայ։*

(2) *Ժողովուրդին հետ տարագրուած և ճամբան նահատակուած։*

(3) *Ծնած* 14 *Փետր.* 1858*ին Մունճուսուն, աշխարհական անունով Յովհաննէս։ Նախակրթութիւնը առած է իր ծննդավայրին Մծբնեան դպրոցը, յետոյ յաճախած է Մարզուանի Անաթոլիա գոլէճը։ Իբր ուսուցիչ պաշտօնավարած է վեց տարի Մունճուսուն և* 13 *տարի Թալասի Աշըգեան Ազգ. վարժարանը։* 15 *Օգոստ.* 1893*ին կը ձեռնադրուի Ստեփանոս եպ. Սանտալճեանէ՝ Մունճուսունի եկեղեցիին վրայ ուր վեց տարի պաշտօնավարելէ յետոյ՝ անցած է Թալաս։ Մինչեւ Տէր-Զօր ողջ հասնելէ յետոյ կը նահատակուի հոն տեղւոյն ընդհանուր ջարդին հորի մը մէջ նետուելով։*

(4) *Ծնած* 1880*ին Սարը–Համզա (Եօզղատ) երկրագործի որդի։ Մարզուանի Գոլէճէն և Աստուածաբանական ճեմարանէն ընթացաւարտ կը վերադառնայ հայրենիք, վեց տարի պարբերաբար վարելով կրթական և քարոզչական պաշտօններ ծննդավայրին և անոր մերձակայ*

մուլթիւնը ընդունած ըլլալուն համար խղճահար կը մեռնի ուրիշ Հայ բողոքական պատուելի մը՝ վեր. Միգար Յ. Մնգիրեան(1) որ կը թաղուի իբր իսլամ։

Իսկ հասարակ ժողովուրդը, կը ջարդուի տարագրութեան ճամբուն վրայ կամ Տէր-Զօր։

Այսօր հարուստ և բարգաւաճ Թալասի հայութիւնը փճացած է և երբեմն շէն ու ծաղկեալ աւանէն որուն նոր բարգաւաճումին կ'սպասէր խեղճ Աշոտ քհ. Երկաթ, ոչինչ մնացած է, բացի ընդհանուր կոտորածէն հրաշքով ազատած խլեակներէ, որոնք զինադադարէն յետոյ բացին Թրքական քանդումէն փրկուած միակ եկեղեցին Ս. Աստուածածինը և իրենց վարժարանները, և փորձեցին վերակազմել իրենց ազգային ներքին վարչութիւնը՝ Թաղական Խորհուրդ կազմելով, սակայն իրենց վիճակը թոյլ չտուաւ ո՛չ հոգեւոր հովիւ մը ունենալու և ո՛չ ալ դպրոցները շարունակելու։

II

# ՏԷՐԷ ՎԱՆՔ ԿԱՄ ՏԷՐԷՎԷՆԿ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱԳԱՅ.

Տէրէ Վանք գիւղը կը գտնուէր Կեսարիոյ արեւելակողմը եօթը քիլօմէթր հեռու։

«Թալասի Վերի Թաղի ծառուղիէն կը զատուի անկանոն ճամբայ մը որ նախ կը խաչատէ ժայռուտ հեղեղատ մը, յետոյ կ'անցնի այգեստաններու մէջտեղէն. վերջապէս քարահանքի մը խորխորատը քերել անցնելով կը բարձրանայ նոր բլուրի մը վրայ։ Հոնկից՝ ճիշդ դիմացը կը տեսնուի ժայռուտ ու սեպաձեւ երկրորդ բարձունք մը։ Այս երկու հանդիպակաց բարձունքներուն միջեւ սեղմուած է ձոր մը որ աւելի անդունդի մը կը նմանի. այնքան նեղ է։ Այս նեղ խոռոչութիւնը, որուն վրայ երկու կողմերէն կախուած կ'երեւին արտառոց ձեւով ժայռեր, որոնք չես գիտեր ինչպէ՞ս կրնան իրենց հաւասարակշռութիւնը պահել իրենց այնքան փոքր խարիսխներուն վրայ, կ'երկարի, կ'երթայ ու կը խառնուի Տաւրոսէն կազմուած հովիտներուն, իսկ հիւսիսէն կը ցածնայ հետզհետէ ու կը կորսուի Կեսարիոյ դաշտին մէջ։

«Ահա այդ ձորին ամենախոր, նաև ամէնէն վտանգալի մէկ խորշին մէջ բոյն դրած է զուտ հայաբնակ Տէրէվանք գիւղը, գեղեցիկ՝ իր կոկիկ բնակարաններովը, հիասքանչ իր ընդգրկած բարբարիկ տեսարանով, և խորհրդաւոր՝ իր մշտանուագ գեղգեղներով, զորս կը մրմնջեն բնութեան անծանօթ երակներէն բղխած իր ակերը։ Եւ որոնց արձագանգը —պիտի ուզէիր ըսել— տեղւոյն սպառնացայտ ապառաժներուն անգամ բարի խորհուրդներ կը ներշնչեն։

«Այս գիւղին աւանդութիւնը բնական արկածներու պատմութիւններով զեղուն է։ Գարնան և աշնան անձրեւներէն կազմուած ուղխներ մաշեցուցած են ժայռերու նստատեղիները։ Անոնցմէ ոմանք գլորած են ձորին մէջ և երբեմն գիւղին վրայ ու կեանքի և ստացուածքի կորուստներ պատճառած։ Եւ սակայն աղէտէն պրծողները՝ ցեղին տոկունութիւնը մինչեւ իսկ բնութեան սպառնալիքներուն դէմ ցցելով՝ յամառած են կառչած մնալ գիւղին։

«Երկու մասերու բաժնուած է Տէրէվանք. հիւսիսային և հարաւային։ Տուներու ճակատները առանց բացառութեան որբատաշ քարերով շինուած են. տեղացիները ընդհանրապէս որմնադիր են, հետեւաբար ամէն մէկ տանուտէր իր անձնական աշխատութեամբ կերտած է իր բոյնը։ Իսկ բնութիւնը, կամ գուցէ նախապատմական դարերու աշխատութիւններ մասամբ դիւրացուցած են այժմու Տէրէվանքցիին գործը. վանքի կանխատեսութիւնն ունեցած են ձորին այդ մասին մէջ անձաւներ փորելու կամ վիմափոր խուցեր ձեւացնելու. այնպէս որ Տէրէվանքի տուներէն ամէնքը, որ թիկունքնին լեռան տուած են, ունին վիմափոր սենեակներ որ յաճախ մառանի տեղ, նոյն իսկ իբր ձմեռանոց կը գործածուին։

«Ունին եկեղեցի մը. նոյնպէս վիմափոր և հետեւաբար նաև մութ. բայց Տէրէվանքցին անոր վրայ կը գուրգուրայ այնքան, որքան կեսարացին չէ գուրգուրացած իր մայր եկեղեցիին վրայ. այդ վիմափոր հաստատութիւնը իր —գուցէ հարիւրաւոր— դարերու հնութեան պատկառանքովը համակած է գիւղացին։ Անոր կուշտին կանգնած է Տէրէվանքի համեստուկ դպրոցը որ շինուած է ատենօք գիւղացիին ձրի աշխատանքովը։

«Անշուշտ Կեսարացի ընթերցողս կ'ուզէ որ ճամբաս շարունակեմ դէպի հարաւ, և ա՛յս գիւղին հեղեղատին եզերքէն անցնելով։ Այսպէս կ'ուզէ, վանքի բազմաթիւ հին յիշատակներ, կամ —իր բացատրութեամբը— կօշիկի կտորներ թողուցած է հոն։ Թող անհոգ ըլլայ այս մասին. արդէն մտածած եմ բռնել միեւնոյն ճամբան, վանքի ես ալ մէկն եմ որ գուցէ ամենէն շատ կօշիկի կտորներ թողուցած եմ այդ վայրերը։

---

գիւղին՝ Էյլէնճէի, նաև Զօմագըլըի մէջ։ 1914ին մատակարար Թալասի Ամերիկեան բարձրագոյն վարժարանին։ Տարի մը հազիւ անցած, կը տարագրուի Տէր-Զօր և հիւանդանոցին մէջ կ'աւանդէ հոգին, տաժանագին իր ճամբորդութենէն ժառանգած ոտնացաւէն չկրնալով ազատիլ։

(1) Ծնած 27 Փետր. 1870ին։ Նախնական կրթութիւնը ծննդավայրին մէջ ստանալով՝ 1886ին Այնթապ Գոլէճը կը մտնէ և ուսանողական շրջանին՝ տարի մը պաշտօն կը վարէ Նէնիճէ-Գալէ իբր ուսուցիչ-քարոզիչ։ 1892ին նոյն կրթարանէն, 3 տարի ետքն ալ Մարաշի Աստուածաբանական ճեմարանէն ուսումնաւարտ՝ կը նետուի կրթական և հովուական ասպարէզ, դասաւանդելով Մարաշի բողոքական բարձրագոյն վարժարանին մէջ և երկու տարի աւետարանելով տեղւոյն եպիսկոպոսական եկեղեցին։ Ծննդավայր դարձին՝ կ'ամուսնանայ և 1899էն սկսեալ տարի մը Բումոնկին, վեց տարի ալ Էվէրէկ կը շարունակէ քարոզութիւնը, վերջնոյն մէջ երէց ձեռնադրուելով 1903ին։ Երկու տարի վերջ կը հրաւիրուի Թալաս՝ ուր կը մնայ մինչեւ աղէտի տարին և մինչեւ իր տխուր վախճանը։ Հեղինակ Աստուծոյ գոյութիւնը և Համաձայնութիւն չորս Աւետարաններու հայատառ-թրքաբարբառ գիրքերուն։ Նախագահ բողոքական կեդրոնական միութեան (Մարզուան-Սեբաստիա-Կեսարիա)։ Յարգուած մեծապէս միսիոնարներէն։

«Արդ հոն, գիւղին ճիշդ առաջը, մէկը՝ հեղեղատին աջ, իսկ միւսը ձախ եզերքին վրայ կ'աղբերանան երկու ակեր. առաջինը անուն չունի, գուցէ անոր համար որ աղբիւրի երեւոյթ չունի, այլ պարզ ակ մ'է որ ստորերկրեայ, անծանօթ ճամբէ մը լոյս աշխարհ կու գայ կը հասնի։ Երկրորդը Թուք Ալթը կ'ըսուի, հովանաւորուած է քանի մը հինաւուրց թութի ծառերով, ու չուրջը յարդարուած է հաճոյասէրներու պատկառելի խումբ մը հիւրասիրելու չափ ընդարձակ տարածութեան մը վրայ։ Այդ նեղ ձորին մէջ այդ երկու գրեթէ հանդիպակաց աղբիւրներու արձագանգին քաղցրութիւնը ո՛չ մէկ երաժշտութեան հետ փոխել պիտի յօժարէր բնութեան սիրահար մը։

«Կը քալես քարուտ հեղեղատին եզերքէն. աջ կողմդ լերան կողերէն կախուած են պտղատու ծառեր —խնձորենիներ, տանձենիներ, ծիրանիներ,— նաեւ անպտուղներ — ուռիներ, կաղամախիներ —, ու մանաւանդ ժայռեր, գժնեխեխիլ ժայռեր, բայց դու անփոյթ ես. բնութիւնը —գէթ այդ պահուն— աւելի քան ոեւէ տեղ գուրգուրոտ է քեզի հանդէպ կարծես։ Քսուելով կ'անցնիս երկար պատի մը առջէն. ան պարիսպն է Ս. Սարգիս վանքին Խաս Պաղչային։ Կը սողոսկիս թուփերու մէջտեղ ոլորուող կածանէ մը, ու կը խաչատես հեղեղատը։ Տեսարանը փոքր փոփոխութիւն մը կրած է այդ տեղ։ Նախ ձորը լայնցած է քիչ մը, իսկ երկու կողմի բարձունքներն աւելի սեպացած։ Մանաւանդ աջ կողմի, այսինք արեւմտեան բարձունքը սոսկալի երեւոյթ մ'ունի. քարաժայռերու շարք մը բնական պարիսպի ձեւով դիրք բռնած է. անոնց գագաթին վրայ արծուի բոյներու պէս թառած են քանի մը սենեակներ. Սուրբ Սարգիս վանքին քանի մը խուցերն են անոնք — կեսարացիներու սիրալի Տէրէ-վանքին։ Դիմացդ կ'երեւի կամուրջ մը՝ հինաւուրց, քարաշէն ու տակաւին անաղարտ. ան երկու հանդիպակաց բարձունքներուն միութեան գիծն է։ Անոր ասդին ու անդին երկու կողմի բարձունքներէն գլորուած ամէն ձեւէ ու մեծութեամբ քարաժայռեր իրենց գտած նոր խարիսխներուն վրայ անդորր նստած են։ Իսկ աջ կողմդ ձորին լայնցած մասին անկիւնը, վանքին քարաժայռերուն տակ կ'երեւի քառակուսի տափաստան մը ձորէն վեց ոտք վերով։ Ձորին կողմէն առաջը բաց այս տափաստանը երկու կողմէն շրջապատուած է վանքին դարաւոր հիմերը կազմող, քարաժայռերով, իսկ հարաւէն հին պարիսպի մը մնացորդով, որուն անկիւնը ցած ու նեղ դռնէ մը երկուքի ծալլուելով ներս —այդ տափաստանը կը մտնես։ Ոտքերուդ ներքեւէն, ժայռերէ կազմուած բնական կամարի մը տակէն կը բղխի ջուր մը ականակիտ, սառնորակ, որ կ'երթայ տափաստանին մէջտեղը բացուած գեղեցիկ աւազանը, ու անկէ կ'իջնէ ու կը հոսի ձորն ի վար դէպի գիւղին կողմը։ Ահա այդ տեղը, ի պատիւ զայն հովանաւորող դարաւոր ընկուզենիին որ հինաւուրց վկան է եղած ժամանակներու ընթացքին հոն կատարուած անհատնում խրախճանքներուն, և որ իր կարգին հովանաւորուած է Ս. Սարգիսէն, կ'ըսուի Ճէվիզ ալթը (1)։ Անկից քանի մը յիսնեակ քայլ անդին արեւմտեան բարձունքին ստորոտէն, միշտ ժայռերով պատսպարուած խոռոչէ մը դուրս կու գայ ուրիշ ջուր մը աւելի առատ ու նոյնքան պաղորակ. Գրզլար Փունար կը կոչուի. քանի մը քայլ վարով ան կը ձեւացնէ բնական գուռ մը տաշտի ձեւով. գիւղին և ուխտաւորներու տղոց լուացարանն է ան(1)։

«Ճէվիզ ալթըի դրան առաջէն վեր կ'ոլորուի լայն խճուղի մը որ կը յանգի վանքի ցած ու լայն դրան առաջ։ Երբ այդ դռնէն ներս կը մտնես, արդէն պատկառանքը կը գրաւէ քեզ. կը զգաս թէ առնուազն հազար, գուցէ և հազարաւոր տարիներու յիշատակարանի մը առջեւ կը գտնես ինքզինքդ։ Եթէ կրօնասէր ես, այդ վայրերը երկիւղածութեամբ ծնրադրող նախնիքներուդ հոգեկան վերացումները կը վերարթննան մէջդ. եթէ բարեշրջական մ'ես, այցելելով այն ճշմարիտ լաբիւրինթոսը զոր նախամարդեր —անշուշտ— գերմարդկային ճիգերով փորած են վանքի լերան արգանդին մէջ, կը զգաս սրտազեղութիւն մը որ խանդաղատանքի կը նմանի, կը խանդաղատիս՝ արդարև, որպէս թէ ամենահին նախնիքներուդ սրտաճմլիկ տառապանքներուն հանդիսատեսն ես։ Իսկ եթէ բնապաշտ մ'ես, դարձեալ կը յուզուիս, վասնզի կը նկատես որ բնութեան բացառիկ մէկ դրուագն է որ կը վայելես. արդարեւ երբ կուրծքդ յենլով աջ կողմի պատնէշին՝ առջիդ նայիս, ոտքերուդ տակ կը տեսնես լպրծուն երեսներով մութ պղնձագոյն ապառաժներ որ կախուած են ձորին և Ճէվիզ Ալթըի վրայ. իսկ դիմացդ է միշտ գիւղին լեռը՝ սեպաձեւ, լերկ ու քարուտ, որ կը խոկայ իր յաւիտենական գոյութեան վրայ՝ կարծես։ Երբ կռնակդ տաս պատնէշին, կը տեսնես վանքին լեռը որ կարծես չարագուշակ դանդաղութեամբ մը կը ցածնայ՝ վրադ փլչելու համար։ Պահ մը կը սարսռաս. բայց ահա մէկէն վանքը —դուն ըսէ՛ Ս. Սարգիսը— քեզ կը սրտապնդէ, ցոյց տալով իր վիմափոր եկեղեցին, վիմափոր ջրամբարը, վիմափոր խուցերը, վերջապէս իր անթափանցելի անձաւները՝ անհամար, որոնք իրարու զօդուած են ծանօթ կամ անծանօթ ճամբաներով։

«Այս հնութիւնները այնքան գրաւած են քեզ որ հազիւ թէ

(1) Վերը (էջ 740) յիշուեցաւ թէ Աստուածածնայ տօնին երկրորդ օրը Ալի տաղի (Բարսեղ Հայրապետ) վրայ գտնուած Ս. Աստուածածին աւերակ մատուռին ուխտագնացութենէ յետոյ, Հայ ուխտաւորները կ'երթային Տէրէվանք։ Գր. Նշանեան կը կարծէ թէ նոյն օրն իսկ «չեմ գիտեր ինչ սովորութեամբ բանայիր մը կը կատարուէր, վանքին ստորոտը գտնուող պարտէզին մէջ, դարաւոր ընկուզենիի մը տակ եւ շրջակայքը: Ամէն կողմերէ եկած հայութենէն զատ՝ Թուրքեր ալ կու գային մասնակցիլ այդ իսկապէս բարոյական տօնին եւ շատ հազուադէպ էր որ այդ առթիւ արիւնալի կռիւ մըն ալ չպատահէր անոնց մէջ եւ արիւնահեղութիւն չըլլար»: Այս բանայիրը կը կոչուէր Ճէվիզ Ալթը Բէյճի: Ճէվիզ Ալթը ամառնային եղանակին գիւղին զբօսավայրն էր։

(1) Գրիգոր Նշանեան կ'ըսէ թէ «Ձորին արեւմտեան կողմէն բազմաթիւ տեղերէն կը բխէին գետնահոս աղբիւրներ, ժայռերու մէջէն, որոնցմէ մին, վանքին տակ կը կոչուէր «Գրզլար բունար» եւ անուանի էր չափազանց պաղ ջուրով: Ասոնցմէ մինչեւ գարուն գետակ մը կը կազմուէր ձիւնահալի ջուրերէն եւ կը հոսէր դէպի հարաւ խառնուելու Սուրմասուքը կոչուած գետակին, իսկ ամառը հոսուն աղբիւրներու ջուրերը կը կազմէին փոքրիկ առու մը որ կը բաւարարէր ջրելու գիւղին պարտէզները»:

հաճութիւնը կ'ունենաս դիտելու վանքի շրջապատին մէջ նոր մարդուն ձեռքով կատարուած շինութիւնները, — ձորին վրայ նայող քանի մը, բակին վրայ նայող տասնեհինգ քարաշէն սենեակները, փոքրիկ ու սիրուն զանգակատուն մը, և աղբիւր մը։ Ու դուրս կ'ելլես վանքէն հոգիդ համակուած միսթիք տպաւորութեամբ մը զոր պիտի պահես ապահովաբար ամէն անգամ երբ մտքիդ առջև բերես այդ վայրը։»

Եղիազարեանի՝ ականատես տեղեկագրին այս նկարագեղ ու գեղեցիկ տողերը որ միջավայրը կը ներկայացնեն այնքան խղճամիտ կերպով նոյնութեամբ հոս մէջ բերի առանց ընդմիջման և առանց ստորակէտի մը փոփոխութեան իբր տեղագրական պատկերը Տէրէվանքի։

ԱՆՑԵԱԼ.

Եղիազարեան աւելի բան մը չըսեր գիւղին վրայ, որ իր կռնակը թողլով կը շարունակէ իր ճամբան։

Հետեւաբար պահ մը պիտի բաժնուիմ իրմէ թարթափելու համար այս պզտիկ այլ սակայն կարեւոր գիւղին մէջ որ հազիւ 70 տունէ կը բաղկանար և որ սակայն հմայք ունէր իր անունով և գործունէութեամբ։

Տէրէ վանքի մէջ իմ այս պրպտումներուս մէջ ինծի առաջնորդ և մենտոր ունիմ հոն ծնած մտաւորական մը՝ Գրիգոր Նշանեան իմ բարեկամս, որ թէև 12 տարեկանին պանդխտած է Կ. Պոլիս, սակայն իր մտքին մէջ կենդանի պահած է յիշատակը իր ծննդավայրին։

Ան ազնուութիւնը ունեցաւ Քոնսթանցայէն, ուր կը գտնուի հիմա, գոհացում տալ իմ հարցասիրութեանս, լեցնելով այն խրամատները որ դատարկ կը թողուր պատմութեան տեսակէտով Եղիազարեան, որուն սիրած է ուղեգրի ու նկարագրողի դերին մէջ մնալ։

Արդ, ըստ Գրիգոր Նշանեանի «քերեւս Տէրէվանքի առաջին հիմնադիրները Հայեր եղած ըլլան, սակայն ստոյգ է որ գիւղը զուտ յունական երջան մըն ալ ունեցած է, որովհետեւ իր աւերակ տաճարներուն մեծագոյն մասը յունական իկոններ եւ արձանագրութիւններ ունէին եւ անոնց թիւը 5-6 հատ էր զանազան կողմերը: Ասոնցմէ մին, Ս Աստուածածինը՝ որ գիւղին երկու թաղերուն ճիշդ մէջտեղն էր, լեռան սակր եւ հաւանաբար կործանած երկրաշարժէն, պեղուած էր 1870ին գիւղացիներու կողմէ եւ իբրեւ արժէքաւոր ոչինչ գտնուած: Այնպէս որ Վարի թաղին ծերունիները երբ ոեւէ պատճառով ուշանային իրենց առօրեայ աղօթքը կատարելու Վերի թաղ գտնուող Ս. Թորոս եկեղեցւոյ մէջ՝ կը գոհանային Ս. Աստուածածնայ աւերակներուն վրայ կրկնելու իրենց հագեմտունքի աղօթքը»:

Գիւղին հիւսիսային լեռնադաշտին կողին վրայ ալ գտնուած էին 1908–1910ին շատ հին եկեղեցիի մը աւերակները։

Հնօրեայ բնակավայր մը կամ Կապադովկեան Եկեղեցայ սարաբընակ ճգնաւորներուն մեծ կայան մը ըլլալուն փաստը կու տան ո՛չ միայն քայլափոխ գլուխ գտնուած այս եկեղեցիները, այլ նաև այն բազմաթիւ անմատչելի դիրքով քարայրները որոնք գոյութիւն ունէին գիւղին երկու կողմէն հանդիպակաց բարձրութեանց վրայ։ Անոնց նկարագրութիւնը մեզի կու տայ Գ. Դր. Նշանեան, իր մանկութեան յիշատակներով։



«Ս. Թորոսի տօնին օրը երբ այդ լեռանց արեւելեան կուշին վրայ գտնուող վիմափոր մատուռի մը ուխտի կուգային Յոյները, Թալասէն, մենք կը հաւաքէինք անոնց վառած մոմերուն մնացորդները եւ հասակակից տղոց ամէնէն քաջը մեզ առաջնորդ ըրած, կը մտնէինք այդ անձայրածիր քարայրները՝ որոնք բաւական հեռաւորութեան վրայ գտնուող ընդարձակ սրահներէն զատ ունէին ջհոր եւ բազմաթիւ ներանցքներ: Յայտնի չէր այն ատեն թէ՝ անոնք մինչեւ ո՛ւր կ'երկարէին, որովհետեւ դարերու ընթացքին, որոշ հեռաւորութեան վրայ փլած էին եւ միայն անվթար մնացած էր այն ճամբան՝ որ կը տանէր գիւղին անմատչելի մէկ զահավէժին վրայ բացուած ծակին, եւ այն կը ծառայէր հաւանաբար իբրեւ պաշտպանման լրտեսելու գիւղին կացութիւնը: Անկէ դուրս սակաւին կային բազմաթիւ քարայրներ ընդհանրապէս յենուած աղաւնետուններ՝ ուր զիբերները ժամադիր կ'ըլլային քաղաքին Թուրք էֆէնները թեթեւաբարոյ կնոջ մը հետ, մինչեւ առաւօտ սարդանապալեան խնճոյք կատարելու, եւ շատ անգամ ալ ուրիշ խումբի մը հետ կռուի բռնուելու եւ զիրար սպաննելու համար:

Աւելի հեռու, դէպի գիւղին վրան, գոյութիւն ունէին հարիւրի չափ աղաւնետուններ՝ գիւղացիներու սեփական, որոնցմէ ոմանք մինչեւ 500 զոյգ աղաւնի կ'ունենային, եւ անոնց ձագերը կը կազմէին գեղացիներու հաւեղէն կերակուրները ընդհանրապէս: Այս պատճառով արգիլուած էր գիւղացիներու զէնք արձակել գիւղին սահմանին մէջ եւ քաղաքին ու Թալասին Թուրքերն անգամ երբ կը փորձուէին հրացան նետել աղաւնիներուն՝ հետապնդումի կ'ենթարկուէին գիւղին երիտասարդութեան կողմէ եւ նոյն իսկ վրայ կուտային իրենց հրացանը»:

Այս քարայրներուն համար թէև Դր. Նշանեան, արձագանգ ըլլալով աւանդութեան, կ'ըսէ, գիւղացիք հոն կ'ապաստանին եղեր Ենիչէրիներու ատեն վտանգի պահուն, սակայն հաւանական չի թուիր այս տեսութիւնը։

Ընդհակառակը աւելի հաւանական է որ անոնք հնօրեայ ճգնարաններ —որոնցմէ այնքան շատ ունէր Կապադովկիա— էին, որոնք յետոյ գիւղացիք կրնան գործածած ըլլալ իբր ապաստանի վայր։

Ch. Texier, այդ քարանձաւներուն համար ըսած է թէ անոնք կը ծառայէին իբր աղօթարաններ քրիստոնէական առաջին դարերուն, բայց V. Cuinet (Ա. 318) քիչ հաւանական կը գտնէ որ այդ պեղուած քարանձաւները այն նպատակին ծառայած ըլլան, և կ'ըսէ թէ շատ շատ իբր ճգնարան կրնան գործածուած ըլլալ, կամ կրնան իբր աղաւնետուն ծառայած ըլլալ, ինչպէս հիմա են։

Տէրէ վանք ինչպէս կ'երեւայ քանի մը անգամ ամայացած և շէնցած է։

Մասնաւորապէս 1825ի երկրաշարժէն յետոյ ցրուած են և գիւղը անշքացման մատնած։

«Հաւանաբար այդ երկրաշարժէն շատ առաջ անգամ մըն ալ ցրուած է գիւղը՝ որուն բնակիչները մեծամասնօրէն գաղթած են Պոլիս եւ հաստատուած Ակիւսարի Եէնի-Մահալէ թաղին մէջ: Ես Պաղլար Պաշը գերեզմանատան անկիւնը տեսած եմ Տէրէ-Վանքցոց թաղը, ուր բազմաթիւ հին տապանաքարեր կը մնան ցայժմ» (Գր. Նշանեան)։

Տէրէ վանքի կեանքը ունեցած է ուրեմն ելեւէջներ և շարունակ անիկա լեցուած և պարպուած է, մասնաւորապէս բնական աղէտներու հետեւանօք։ Սակայն անոնք կրցած են իրենց գոյութիւնը քաշքշել այդ բնութեան անկիւնին մէջ, անխառն ու զուտ հայաբնակ

բնակչութիւն մը պահպանելով, եթէ ոչ ԺԲ. դարէն գոնէ ԺԷ. դարէն սկսեալ մինչև հայաջինջ աղէտը։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Տէրէ վանք ի սկզբան զուտ հայաբնակ չէր և «կ'երեւի թէ քանի մը տուն թուրք բնակիչ ալ ունեցած է ժամանակին» (Դր. Նշանեան)։ Արդարև 1806ին Հ. Ղուկաս Ինճիճեան (Աշխարհ. Ա. հտ., 314) կ'ըսէ թէ գիւղը ունէր 60 տուն Հայ և 10 տուն Թուրք բնակիչ որոնք 30-40 տարի վերջը արդէն գոյութիւն չունէին։ «Այդ պատճառաւ գոյութիւն ունեցեր է նաեւ հրապարակին կից գերեզմանատուն մը, բաւականաչափ տապանաքարերով, որոնք Թուրքերու հեռացումով հետզհետէ քանդուեցան մեր օրով եւ 1890էն վերջ գերեզմանատունը վերածուեր է պարտէզի» (Դր. Նշանեան)։

Տարագրութենէն առաջ գիւղը ունէր զուտ Հայ 70 տուն բնակիչ։

ՀԱՅՔ 'Ի ՏԷՐԷ ՎԱՆՔ.

Հաւանական է կարծել թէ երկրաշարժէ աւերուած յոյն գիւղի մը կամ Կապադովկեան ճգնարաններու տեղւոյ մը վրայ եկած հաստատուած են Հայերը, որոնք թերեւս տիրացած են նաև այն ճգնարաններուն կից դարձեալ վիմափոր աղօթարաններուն — որոնք վանքի և եկեղեցիի վերածած են — և հայացուցած են գիւղը և շրջակայքը։

Բայց ե՞րբ։ Ահա հարց որուն որոշ տուեալներով պատասխանել կարելի չէ։

Ըստ Գ. Ճիվան Աշըգեանի հայերէն գրչագիրներու յիշատակարաններու համաձայն ԺԲ. դարուն Արծրունի Սենեքերիմ թագաւոր երբ Սեբաստիա կը տեղափոխուի, իր հետեւորդներէն մաս մը իբր թէ հոս կը հաստատուին։

Այս տեսութիւնը, որքան ատեն որ այդ յիշատակարանները չեն յայտնուած, ինծի չափազանց խախուտ կը թուի, վասնզի ծանօթ ձեռագիրներու և պատմագրութեանց մէջ այս մասին ոչ մէկ ակնարկ կայ։

Հնագոյն յիշատակութիւնը 1729ին Տաթեւացւոյ Քարոզգիրքի մը սա տողերն են. «Գրեցաւ գիրս ի Մաժակ քաղաքի գիւղն Հոռի ( ? = Ջորի) վանքն ի վանքն սրբոց զօրաւարացն սրբոյն Գէորգայ եւ սրբոցն Սարգսի զինաւորին...»:

Հոռին՝ Ջորի կարդալու յանդգնութիւնը կ'ունենամ նոյն ձեռագիրին մէջ միայն 11 տարի յետոյ (1740) հանդիպած ըլլալով «Տէրէ Վանք» անունը, որ անշուշտ առնուած է դրացի վանքին և տեղւոյն վանաբոյր միջավայրէն։ Քիչ յետոյ Սիմէոն Երեւանցի իր Ջամբռին մէջ ալ կը յիշատակէ այս գիւղը, որուն շատ մեծ հնութիւն մը ունենալը հաւանական չէ։

Նոյնիսկ կարելի է խորհիլ թէ անիկա վանքին մէկ պարգեւն է և անոր շուրջը գոյացած։

Հայոց առաջին աղօթարանը եղած է հաւանօրէն Յոյներէն մնացած, գիւղին երկու թաղերուն միջև գտնուող Ս. Աստուածածին եկեղեցին, ուր աւանդաբար կ'երթային աղօթել Տէրէ վանքի ծերերը, ինչպէս ըսուեցաւ։ Այս հին եկեղեցին կը կարծուի թէ 1825ին երկրաշարժէն կործանած է և չէ վերաշինուած։ Վերջերը ունէին միակ



եկեղեցի մը, գիւղին վերի մասին մէջ, Ս. ԹՈՐՈՍ անունով, «վիմափոր, ընդարձակ... փորուած արեւելեան կողմը գտնուող լերան մէջ, այնպէս որ լոյսը կ'առնէր արտաքին դրան քովի պատուհաններէն եւ ամէնէն պայծառ օրերուն իսկ ներսը մի քանի վայրկեան մնալ հարկ կ'ըլլար Շարականն ու ժամագիրքը կարդալու համար» (Դր. Նշանեան)։

Իր հիմնարկութեան վրայ ո՛չ մէկ տեղեկութիւն, և ո՛չ մէկ արձանագրութիւն։ Հին թուականներով յիշուած ալ չէ բնաւ։

Եկեղեցին հարուստ էր սպասներու կողմէ և ունէր աւելի քան 30 օխա արծաթ խաչեր։

«Անոնք հասարակ օրեր կը պահուէին մասնաւոր թաքստոցի մէջ, եւ հանդիսաւոր օրեր միայն դուրս հանուէին Սեղանը զարդարելու համար: Չենք գիտեր՝ թէ տեղահանութեան առթիւ Թուրք կառավարութիւնը կրցաւ կողոպտել զանոնք, թէ տակաւին կը մնան նոյն թաքստոցին մէջ՝ որուն տեղը ո՛չ ոք գիտէ այսօր» (Դր. Նշանեան)։

«Ս. Սարգսի վանքը եւ Ս. Թորոս եկեղեցին մինչեւ 1890 կը գործածէին աւանդական կոչնակը, ժամերգութեանց առթիւ եւ անկէ վերջն է որ երկուքն ալ ունեցեր են զանգակատուններ ու զանգակներ, որոնք հաւանաբար կողոպուտի ենթարկուեցան ընդհ. պատերազմին՝ երկու տաճարներուն ալ բաւական կարեւոր հարստութեամբ»։

«Իր բակին մէջ էր նաեւ դպրոցը, երկյարկանի, զոր ամէնէն գեղեցիկ շէնքը կարելի էր նկատել գիւղին մէջ» (Դր. Նշանեան)։

Վարժարանը կոչուած էր յանուն Ս. Թարգմանչաց: 1872ին հոն կ'ուսանէին 38 մանչ 16 աղջիկ աշակերտներ, իսկ 1901ին 35 մանչ և 15 աղջիկ աշակերտներ ուսուցիչի մը ձեռամբ, 100 ղրշ. ամսական ծախքով որ Եկեղեցիին սնտուկէն կը հոգացուէր։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

Տէրէվանք, հակառակ անոր որ զուտ հայաբնակ գիւղ մըն էր, թրքախօս էր։ Սակայն ի սկզբան հայախօս եղած է։ Տակաւին դար մը առաջ անոնք Հայ լեզուն կը պահէին։

«Սակայն գիւղացիները քանի յարաբերութեան մէջ կը մտնեն թրքախօս Թալասի եւ Կեսարիոյ հետ, եւ իրենց տղաքներուն համար հարսնցու կը գտնեն այդ տեղերէն, կ'ստիպուին իրենց հարսերուն լեզուն գործածել: Մանաւանդ երբ Թալասէն ալ մի քանի ընտանիքներ կու գան հաստատուիլ Տէրէվանք, հայերէն լեզուն բոլորովին կը դատապարտուի մոռացութեան: Իմ մանկութեան շրջանին(1) գիւղին ծերունի կիներն ու այրերը երբ իրենց հարսերէն գաղտնի բան մը կ'ըսէին իրարու հայերէն լեզուն կը գործածէին՝ նորերու զարմանք եւ ապշութիւն պատճառելով:»

«Վանքին վանահայրը պաշտօնով մը կը տեղափոխուի այլուր եւ քանի քանի տարի յետոյ երբ անգամ մըն ալ կը հանդիպի գիւղ եւ կը տեսնէ՝ թէ ժողովուրդը թուրքերէն կը խօսի, գիւղին երեւելիները կը կանչէ իր մօտ, անոնցմէ հարցնելու համար պատճառը: —«Այս գիւղին աքաղաղներն անգամ հայերէն կը խօսէին, ի՞նչ եղաւ որ դուք հիմա թրքերէն կը խօսիք» կ'ըսէ հայր սուրբը: —«մեր տղաքները դուրսէն թրքախօս աղջիկներ առին եւ որովհետեւ անոնք հայերէն չէին գիտեր՝ մենք ալ ստիպուեցանք թրքերէն խօսիլ»:

—«Հարսը որ տունը որ եկաւ ունէր ամուսին մը, կեսուր մը, կեսրայր մը եւ հաւանաբար տագրեր եւ տալեր: Դուք ի՞նչ անպիտաններ էք որ մէկ հարսին

(1) Այսինքն 1880ական և 1890ական թուականներուն։

չկրցիք հայերէն սորվեցնել եւ անիկա յաջողեցաւ ձեր ամէնուն ալ թրքերէնը սորվեցնել»:

«Գիւղին հայախօս ըլլալուն բացայայտ ապացոյցներն են այն բառերը՝ զորս մինչեւ վերջ կը գործածէին գիւղացիները, *բին* (=բոյն), *փիթիկ* (= փեթակ), *ակքատ* (= աղքատ), *սոմ* (= ծոմ), *օղորմութիւն* (= ողորմութիւն), *խաչերկէթ* (= խաչերկաթ), *փորսանք* (= փորձանք), *մօրիք* (= մօրուք), *ճիճի* (=ննի) եւ *պիզտիկ* (պզտիկ), *կապան*, *քարամէջ*, *փշրանք*, *հատիկ* (խաշւած ցորեն), *աղօթք*, *արժանի*, *շնորհք*, *ժառանգ* եւ այլ» (*Գրիգոր Նշանեան*)։

*Ինչպէս Թալաս նոյնպէս Տէրէվանք կը գտնուէր շատ տնտեսական ձախող պայմաններու մէջ։ Երկրագործական յարմարութիւններէ զուրկ էր։ Իր դիրքը աննպաստ էր ձորին մէջ թաղուած ըլլալով և հազիւ թէ պարտէզներ ունէր, որոնց կը բաւէին ձորին մէջ բխող ջուրերը։* «Գիւղը ժամանակին ունեցեր է ջուրի բաժին մըն ալ, որով կը դառնայ եղեր վանքին ջրաղացքը, մեր ժամանակին աւերակ: Սակայն յետոյ Ստամքանա թրքաբնակ գիւղին բնակիչները կտրեր են Տէրէվանքի ջուրը եւ վանքը այն ատեն թէեւ դատ ալ բացեր է, բայց Շէրիի արդարադատ (!) դատարանը ի նպաստ Ստամքանացիներու որոշում տուեր է եւ գիւղը զրկուեր է Արգէոսէն իրեն բաժին ինկած ջուրէն» (*Գր. Նշանեան*)։

*Եթէ նոյնիսկ ջուրի առատութիւն ունենար Տէրէվանք, իր շուրջի հողերը նպաստաւոր չէին մշակութեան և ասոր համար է որ արդէն Թուրքերը՝ Հայոց լքած էին այս գիւղը։ Ամբողջ շուրջը քարուտ էր։ Ան* «անսպառ հանք ունէր **Ծոնու** քարերու եւ թուրք քարակոյտեր իրենց կտրած քարին համապատասխան չափով տուրք կու տային Ս. Թորոս եկեղեցւոյն» (*Գր. Նշանեան*)։

*Այս աննպաստ պայմաններուն պատճառով 70 տնուորէն հազիւ տասնեակ մը տեղւոյն վրայ կը ճարէր ապրուստը։ Հետեւաբար գիւղին արու բնակչութիւնը գրեթէ առանց բացառութեան, կը պանդխտէին ի Կ. Պոլիս և կ'զբաղէր ստաղձագործութեամբ, և մի քանի տարին անգամ մը կը դառնար հայրենիք, ձմեռը հոն անցնելու և գարնան դարձեալ Պոլիս դառնալու համար։ Այդ էր պատճառը որ գրեթէ աղքատ չի կար գիւղին մէջ։*

*Գիւղին մէջ կը մնային միայն գործէ քաշուած ծերերը, զբաղելով պարտէզի մշակութեամբ։*

*Գիւղին 100ի չափ վիմափոր աղաւնետունները, — որոնց վրայ խօսեցայ— կը բաւարարէին ընդհանրապէս տեղացիներու միսի պահանջին, որով գիւղին տնտեսական կեանքին մէջ դեր մը կը կատարէին։*

«Տէրէվանք խաղաղ մնացած է ներքնապէս մինչեւ 1858, երբ վախճանած է գիւղին Տ. Պօղոս քահանան՝ որուն գերեզմանը կը մնար եկեղեցւոյ գաւիթին մէջ: «Երկպառակութիւնը կը ծագի նոր քահանայի մը ընտրութենէն, քանի որ գիւղացիներուն մէկ մասը կ'ուզէ հրաւիրել Տէրէվանքցի Տ. Ստեփանը՝ որ կը քահանայագործէր Թալասի մօտ, Քիւչիւք Քէօյի եկեղեցւոյն մէջ: Միւս մասը կ'ուզէ քահանայ ձեռնադրել տալ Տէր Աւետիսը՝ որ կասկածելի էր իբրեւ կախարդ, եւ մինչեւ ի մահ ալ մեծ յարգ կը վայելէր իբրեւ բժիշկ եւ դեւահալած: Գիւղը կը բաժնուի երկուքի, եւ երկու հատուածին մէջ ալ ատելութիւնը կը սրի իրարու դէմ՝ մոլեգին կերպով: Պատրիարքարանը կ'արգիլէ Տէր Աւետիսի ձեռնադրութիւնը գրելով Սիս՝ ուր գաղտնի փախցուցած էին իր կուսակիցները,



բայց մինչեւ հրամանին Սիս հաղորդուիլը, Տէր Աւետիս քահանայացած կը վերադառնայ Տէրէվանք: Վերջապէս երկուքն ալ կը քահանայագործեն եւ առերեւոյթ խաղաղութիւն մը կը հաստատուի գիւղին մէջ: Երկու կուսակցութեանց ատելութիւնը անգամ մըն ալ ծայր կու տայ 1888ին, երբ Տէր Աւետիսի կուսակիցները կը բաժնեն դպրոցը եւ կը փոխադրեն վանք:

Բայց փոքրահասակ մանուկներուն համար դժուար ըլլալով ամէն օր, երկու երեք անգամ վանք երթալ ու վերադառնալ, ժամանակ մը վերջ դպրոցը փոխադրեցին գիւղ եւ ի վերջոյ չկարենալով հայթայթել ծախքը, ստիպուեցան հաշտուիլ եւ կրկին միացնել դպրոցը: Վերջերս երկու քահանաներն ալ վախճանած էին եւ Տ. Ստեփանի որդին, գիւղին երկարամեայ վարժապետը, Պ. Բարսեղ, քահանայ ձեռնադրուած էր Պոլսոյ մէջ, Տ. Վահան անունով:

Ան, տարագրութեան դէպքէն առաջ իբրեւ յեղափոխական (?) բանտարկուած էր Կեսարիոյ մէջ, եւ այդ պատճառով ողջ մնաց մինչեւ պատերազմին վերջը(1): Զինադադարին հետ գտաւ իր երկու աղջիկները մօտակայ գիւղերու Թուրքերուն հետ ամուսնացած բռնի, եւ երիցուհին ալ ապաստան գտած անոնցմէ միոյն քով: Բայց հազիւ թէ իրարու քով եկած եւ խեղճ քահանան ամայացած գիւղին քանդուած տաճարին մէջ կրկին սկսաւ պաշտամունքի, բծատենդը իրարու ետեւ տարաւ իր աղջիկը, երիցուհին եւ ամէնէն վերջն ալ զինք, որ գիւղին գերեզմանին մէջ վերջին թաղուողն եղաւ Թալասի յոյն քահանայի ձեռքով(2)» (*Գր. Նշանեան*)։

*ԱՐԵԱՆ ՏՈՒՐՔ.*

*Տէրէվանք, ցից ու ժայռուտ երկու լեռներու մէջ հաստատուած գիւղ մը, իր անառիկ դիրքով, առաջին օրէն ուշադրութիւնը գրաւած էր Թուրք կառավարութեան։*

*Ան գիտէր թէ Ս. Սարգսի վանքը երբեմն կեդրոն դարձած էր Կեսարիոյ Հնչակեան յեղափոխական շարժումին 1892ին։ Ուստի 1895–1896ի Համիտեան կոտորածներու ժամանակ, երբ Կեսարիա ալ իր արեան տուրքը կը վճարէր Հայ յեղափոխութեան, Տէրէվանքի շրջակայ Թուրք գիւղացիներն առիթէն օգուտ քաղելով յարձակում փորձած են գիւղին վրայ, եթէ ոչ ջարդ մը կազմակերպելու՝ գոնէ հարուստ կողոպուտ մը ձեռք բերելու համար։ Գիւղացիները, թուով շատ քիչ,*

---

(1) *Ամբաստանութիւնն որ իր վրայ բեռցուցած էին արգիլեալ գիրքեր պահած ըլլալն էր։ Այս պատճառով կը նետուի բանտ և Թալասի պատերազմական ատեանէն կը դատապարտուի եռամեայ բանտարկութեան զոր կը լրացնէ։ Թէոդիկ իր «Հայ եկեղեցականներու Գողգոթան» գործին մէջ այնպէս կը կարծէ թէ վախճանած է Թալաս, ինչ որ ճիշդ չէ։ Տ. Վահան քհնյ. թէ՛ բանտին մէջ և թէ՛ անկէ դուրս քանիցս մերժած է հաւատափոխութեան առաջարկները։*

(2) *Տ. Վահան քհնյ. Տէր Ստեփանեան ծնեալ 15 Յուլիս 1861ին Քէչի-քէօյ (կամ Քիւչիւք քէօյ) Թալասի. որուն ծխատէրն էր նոյն ատեն իր հայրը Տ. Ստեփան քհնյ. Մանուկեան։ Աշխարհական անունն էր Բարսեղ — ինչպէս ըսուեցաւ— և ուսած էր Տէրէվանքի Ս. Թարգմանչաց և Թալասի Վարդ-Պատրիկեան վարժարանները։ 1876էն մինչև 1910 ուսուցիչ ի գիւղօրէս։ 2 Մայիս 1911ին ձեռնադրուած է Մաղաքիա եպս. Տէրունեանէ՝ Կ. Պոլիս Գատըքէօյ Տէրէվանքի եկեղեցւոյն վրայ։*

քանի որ այրերուն բացարձակ մեծամասնութիւնը պանդխտած կ'ըլլար Պոլիս, կը կազմակերպեն դիմադրութիւն մը եւ զէն ի ձեռին կը պաշտպանեն Տէրէվանքին կիրճին երկու կողմերը։ Հրացանի քանի մը գնդակներ արդէն բաւական կ'ըլլան Թուրքերը ետ դարձնելու իրենց տեղերը։

Ան Ատանայի ջարդի ժամանակ ալ (1909), երբ եղեռնի ուրուականը պահ մը պտտած էր Կեսարիոյ վրայ, կրցած էր զգուշական միջոցներ ձեռք առնել եւ յարգանք պարտադրել իր շրջակայ Թուրք գիւղացիներուն։ Կառավարութիւնը որ բոլոր ասոնք գիտէր Կեսարիոյ շրջանին մէջ ամէնէն առաջ տարագրութեան սկսաւ Տէրէվանքէն։

«Օր մը յանկարծ ոստիկան զինուորները կը պաշարեն գիւղը եւ մեծամեծները հրապարակով սաստիկ ծեծելէ յետոյ զէնք փնտռելու պատրուակով, հրաման կու տան 24 ժամուան մէջ պատրաստուելու, ճամբայ ելնելու համար։ Ամէն ոք իր կահ կարասին կը փոխադրէ գիւղին եկեղեցին՝ զոր կառավարութիւնը կը կնքէ ապահովութեան համար։ Գիւղացիներէն մաս մը Ալեքսան Թիրեաքեանի (յեղափոխական խանի եղբայր) առաջարկով կ'ուզէ կռուիլ տեղւոյն վրայ, ուժեղ դիմադրութեան մը գինով ժողովրդեան մէկ մասին կեանքը ապահովելու համար, քաջ գիտնալով՝ թէ Թուրք կառավարութեան նպատակը բոլորն ալ կոտորել էր։ Բայց աւելի խոհեմները կ'ընդդիմանան եւ ճամբայ կ'իյնան։

Կարաւանը կը հասնի մինչեւ Կէմէրէկ գիւղաքաղաքին մօտերը։ Կէմէրէկցիք, շփում ունենալով Տէրէվանքցիներուն հետ, ուտելիք կը բերեն խեղճերուն, որոնք ճամբայ կը հանուին հետեւեալ օրը։ Յաջորդ օրը մինչեւ կէսօր քալեցնելէ յետոյ այրերը կը բաժնեն կիներէն եւ քիչ մը անդին կը ջարդեն։ Կիներէն ալ կը ջարդեն ծերերը եւ Թուրքեր եւ Չէրքէզներ կը բաժնեն երիտասարդուհիները։

Թուրքերուն մօտ մնացողներէն ո՛չ մէկ լուր։ Չէրքէզներու քովէն ազատեցան 15ի չափ կիներ եւ աղջիկներ, որոնք ցրուած են հիմա Ամերիկա եւ Մարսէյլ։

Պատերազմի ընթացքին գաղթական Թուրքեր բերին բնակեցնելու համար Տէրէվանքի թափուր տուներուն մէջ, սակայն անոնք քանդելէ եւ փայտեղէնները վառելէ յետոյ հեռացան գիւղէն։

Զինադադարէն յետոյ բանտին մէջ մնացած մէկ երկու Տէրէվանքցիներ ուզեցին վերստին հաստատուիլ հոն, բայց յետոյ հեռացան այլ եւ այլ պատճառներով։

Հիմա գիւղին եօթանասուն տուներէն վաթսունը ինը աւերակ են եւ մէկ հատին, Տ. Ստեփան քհ.ի տունին մէջ, կը բնակի Թալասցի Տէլի Քիւչիւք անուն Թուրք բռնաւոր մը՝ որ ամբողջ գիւղը դարձուցած է իր սեփականութիւնը, թէեւ հիմա ցամքած են գիւղին երեք աղբիւրները, կտրուած են բոլոր պարտէզներուն ծառերը, հարիւրաւոր կախամախիներն եւ ուռիները, եւ ինչպէս կը պատմեն տեսնողները ամբողջ գիւղէն աւերակոյտ մը կը մնայ միայն» (Գր. Նշանեան) անշուշտ ի փառս եւ ի պարծանս թրքական շինարար ... քաղաքակրթութեան։



III

# ԻՍՊԻԼԷ

## (ԱՊԻԼԻԱ ԿԱՄ ԻՍՊԻԼԻԱ)

Տէրէվանքի արեւելեան կողմը, սարահարթին վրայ, 5 քիլոմէթր հեռու հիմա գոյութիւն ունի Իսպիլէ անուն զուտ թրքաբնակ գիւղ մը՝ որուն մօտ, մինչեւ մեր օրերը կը մնար Հայ գերեզմանատուն մը, իր ցանցառ տապանաքարերով։

Ըստ Գրիգոր Նշանեանի «Ծերունիներ կ'աւանդէին որ 1825ի երկրաշարժէն յետոյ Իսպիլէի Հայերը, հաւանաբար Թուրքերու բռնութիւններէն զզուած եւ Տէրէվանք մնացողներու հրաւէրէն խրախուսուած, կը գաղթեն Տէրէվանք եւ կը շէնցնեն զայն, պահելով մինչեւ վերջ ազգային լեզուն»։

Նշանակելի է սակայն որ շատ աւելի առաջ այս գիւղը յիշուելէ դադրած է։

Սիմէոն կաթ. Երեւանցի միայն կը յիշէ Ըսպեռն անուն վայր մը որ չեմ գիտեր թէ կարելի՞ է նոյնացնել Իսպիլէի հետ։

Եթէ ոչ 1765էն առաջ հայաբնակ ըլլալէ պէտք է դադրած համարել եւ ոչ թէ 1825էն յետոյ։

Այս գիւղը կը յիշուի քանի մը ձեռագիրներու յիշատակարանին մէջ։

Հալէպի Ս. Աստուածածին եկեղեցին կը պահուի Աւետարան մը որ 1511ին գրուած է Ներսէս Երէցի մը ձեռքով «ի գաւառս Կեսարիոյ Կապադովկացւոց ի գեաւղս որ կոչի Ապիլեա ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածին եւ Սուրբ Թէոդորոսի զինուորին»։

Ուրեմն գիւղը ունէր այս անուններով երկու եկեղեցի։

Նոյն գիւղին մէջ (այս անգամ Իսպիլիա ուղղագրուած) նոյն գրիչը 1535ին գրած է Մաշտոց մը դարձեալ ընդ հովանեաւ «Ս. Աստծ. եւ Ս. Թէոդորոսի»։ Հաւանօրէն այս գիւղին բնակիչները իսլամացած էին։

IV

# ԹԱՒԼՈՒՍՈՒՆ ԿԱՄ ԹԱՒՆՈՒՍՈՒՆ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՊԱՏ.

Թավլուսուն կամ ըստ Հ. Ղուկաս Ինճիճեանի Թավրուսուն կամ Թաւնուսուն (Դաւլուսուն ալ ուղղագրողներ եղած են) կէս ժամ հեռու է միայն Տէրէվանքէն եւ կը գտնուի Թալասի եւ Կէրմիրի կուշտին, Թալասէն եւ Կեսարիայէն մէյմէկ ժամ միջոցով։

«Տէրէվանքի կրկնաշար բարձունքները գիւղին հիւսիսային ծայրէն սկսելով հետզհետէ կը կորսնցնեն իրենց բարբարիկ հրապոյրը, վասնզի հետզհետէ կը ցածնան։ Եւ սակայն ձորը կը շարունակէ ցուցադրել իր յաւերժական երեւոյթը, մանաւանդ որ դէպի հիւսիս ձորը նուազ քարոտ ըլլալով, աւելի հարուստ բուսականութիւն մը խտացուցած է իր մէջ։

Արդարեւ ծառերն այնքան խիտ են այդ կողմերը որ մարդկային նայուածքին առջեւ անթափանց պատնէշ մը ձեւացուցած են։

Ահա այս կանանչներուն վերեւ արեւելեան բլուրներու մէջ խորացած սափասանին վրայ հաստատուած կ'երեւի Թաւլուսուն գիւղը»:

«Թրքաբնակ գիւղ մըն էր այն, հետեւաբար անշուք եւ աղտոտ: Իննսունըհինգի դէպքերէն առաջ յիսնեակ մը Հայ ընտանիքներ կը բնակէին հոն: Պատերազմի նախընթացներուն ոչ իսկ տասնեակ մը մնացեր էր անոնցմէ. հացի խնդիրը՝ մեծամասնութիւնը ցրուած էր Թուրքիոյ, նոյնիսկ աշխարհի զանազան կողմերը: Փոքրիկ եկեղեցի մը եւ աւելի փոքրիկ դպրոց մը այդ փոքրաթիւ աղքատ հասարակութենէն մնացած միակ յիշատակներն էին» (Եղիա Եղիազարեանի Ձեռագիր)։

Թաւլուսուն առողջ օդով, բաւական կոկիկ եւ ընտիր շէնքերով գիւղ մըն է, պարտէզներով շրջապատուած ըստ ուրիշ տեսութեան մը (Սուրհանդակ, թ. 2295) որ չի համապատասխաներ Եղիազարեանի նկարագիրին։

Իր պարտէզները կը խառնուէին գրեթէ Կէրմիրիններուն։ Բայց երբ պարտէզ կ'ըսուի պէտք չէ ենթադրել բուսականութեան ճոխութիւն։ Այլ անջրդի ձորի մը մէջ, որչափ որ կը ներեն բնական հանգամանքները, միայն ծիրան ու սալոր և ընկոյզ արտադրելու համար տնկուած ծառեր են (Սուրհանդակ, թ. 2295)։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

1806ին գիւղին բնակչութիւնն էր խառն, Հայ, Յոյն և Թուրք 200 տուն (Ինճիճեան, Աշխարհ. Ա. 315)։ Բնաշխարհիկ Բառարան կ'ըսէ թէ գիւղին մէջ կ'ապրէին 1000ի չափ Թուրքեր, 450 յոյներ։ 1907ին (Սուրհանդակ, թ. 2295) գիւղին ընդհանուր բնակչութիւնը 350 տնուոր հաշուուած է։

Գալով Հայ բնակչութեան, 1886ին նշանակուած է 120 տուն (Վտարանդի, Մասիս, թ. 3848) թիւ՝ որ կրկնուած է Բնաշխարհիկ Բառարանէն, իսկ 1898ին Ցարութիւն Նշանեան (Արեւելք, թ. 3822) 30–35 տուն և 1907ին (Սուրհանդակ, թ. 2295)՝ միայն 25 ցոյց կու տան։

1914–1915 Եղիազարեան — ինչպէս տեսնուեցաւ — հազիւ տասնեակ մը կը հաշուէր Հայոց թիւը, մինչ Թէոդիկ 30 տնուոր։

ԱՆՑԵԱԼ.

Այդ գիւղին հաստատութեան, ինչպէս նաեւ Հայերու հոն բնակութեան մասին, ո՛չ աւանդութենէ և ո՛չ պատմութենէ ծանօթ յիշատակութեան մը չեմ հանդիպած։

ԺԸ. դարէն սկսեալ կը յիշուի։ ԺԹ. դարուն տակաւին կը պահէր ապահովաբար իր կարեւորութիւնը և Հայ պատկառելի բնակչութիւնը, վասնզի Սիմէոն կաթողիկոս Երեւանցի զայն կը յիշէ Կեսարիոյ շրջակայ հայաբնակ վայրերուն մէջ (տես Ջամբռ)։

ՀԱՑՈՑ ԿԵԱՆՔԸ.

Հայերը Թաւլուսունի մէջ ունէին եկեղեցի մը Ս. Թորոս անուն և դպրոց մը՝ ՄԵՍՐՈՊԵԱՆ երկսեռ, որ 1873ին ունէր 45 մանչ և 30 աղջիկ աշակերտներ, որոնց թիւը 1901ին երկսեռ 45ի իջած էր։

1907ին իրենց եկեղեցին ալ, դպրոցն ալ փակ էր, ո՛չ քահանայ ունէին և ո՛չ ալ վարժապետ (Սուրհանդակ, թ. 2295)։ Սակայն յետոյ իրենց եկեղեցին բացուած էր և ունէին քահանայ մը։

Գիւղին Հայ բնակիչները 80–90 տարի առաջ հայախօս էին, բայց



կեսարացիներու հետ խնամութիւն հաստատելով յետոյ Թրքախօս դարձան։

Թաւլուսունցիք նաև իրենց ապրուստը կը հայթայթէին պանդխտելով մասնաւորապէս Կ. Պոլիս, ուր գլխաւորապէս կը գործէին իբր ծեփիչ։

1915Ի ԱՂԷՏ.

30–35 տնուոր Հայերը Թաւլուսունի, Կեսարիոյ շրջանի գիւղերուն մէջ ամէնէն բարեբախտները եղած են գրեթէ տեղահան չըլլալով տեղացի Թուրքերու պաշտպանութեամբ։

1919ին տակաւին հոն կ'ապրէին 15 տնուոր և իբր 40 անձ Հայեր հարիւրաւոր Յոյն տուներու մէջ։ Գեղեցիկ մատուռը և վարժարաններու շէնքերը կանգուն մնացեր էին։

Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան, հոն այցելելով զինադադարէն յետոյ կը պատարագէ Ս. Թորոս մատուռին մէջ և կը յորդորէ զիրենք որ սիրով և միաբանութեամբ ապրին իրարու հետ և չմոռնան երախտագէտ ըլլալ իրենց դրացիներուն որոնց շնորհիւ ազատեր էին տեղահանութենէ։

Սակայն յաջորդող դէպքերը այնպէս մը դասաւորուեցան որ հոն գտնուող Հայերը ցրուեցան և 1933ին հոն կը գտնուէր մէկ Հայ իր կնոջ հետ, իսկ եկեղեցին ու վարժարանը անգործածելի և աւերակ դարձած էին։

Տեղահանութեան օրերուն հոն կը պաշտօնավարէր իբր հոգեւոր պաշտօնեայ Կարապետ քհ. Զիչէքեան, որ տեղացի էր (ծնած 1851ին) աշխարհական անուամբ Ղուկիանոս։

Այս քահանան ուսած էր տեղւոյն Մեսրոպեան և Կէրմիրի Պարթեւեան դպրոցները և յետոյ ուսուցիչ եղած էր։ 1879ին կը ձեռնադրուի Ստեփանոս եպ. Սանտալճեանէ։ Հոգաբարձու էր Տէրէվանուց Ս. Սարգիս մենաստանին։

Տարագրութեամբ մինչեւ Տէր-Զօրի կողմերը կ'երթայ և այն կողմերը կը վախճանի։

V

## ԿԷՐՄԻՐ ԿԱՄ ԿԱՐՄՐԱԿ

ՎԱՅՐ ԵՒ ԴԻՐՔ.

Տէրէ վանքի Ձորը շարունակելով Թաւլուսունէն հազիւ 20 վայրկեան հեռու կը հասնինք Կէրմիր որ հաստատուած է ձորին ծայրագոյն արեւելքը երկու բլրակներու միջեւ՝ ձորի մը երկու կուշտերուն վրայ։ Ան կը նշմարուի շարք շարք ձորէն դուրս ցցուած բարձրաբերձ կաղամախիներու գագաթներէն։

Այս 6–7 հարիւր տնուոր գիւղը կը գտնուէր 5–6 քիլոմէթր կամ մէկ ժամ հեռու Կեսարիայէն, անոր արեւմտեան կողմը, քաղաքին և Էֆքէրէի միջեւ, չուրջը բոլոր այգեստաններով շրջապատուած։ Օդը քաջառողջ և հողը արգասաբեր, կրնայ ամէն տեսակ բանջարեղէններ ու միրգեր առաջ բերել։ Գլխաւոր բերքերն են ցորեն, ոսպ, գարի, հաճար, սիսեռ, լուբիա եւայլն։

Գիւղաքաղաքին արտաքին տեսքն ու վայելչութիւնն ոչ նուազ աչքառու է, վասնզի առ հասարակ շէնքերը երկյարկանի կամ եռայարկ քարաշէն և հոյակապ են, իսկ փողոցները սալայատակուած։

«Ան եղած է ատենօք աւելի քան երկու հարիւր Հայ հարուստ ընտանիքներու բարօրութեան օճախը, այնպէս որ հոն կառուցուած քանի մը Հայ ապարանքներ իրենց նմանը չունին Կեսարիոյ մէջ, իսկ Թալասի մէջ հազիւ քանի մը հատ» (Եղիազարեան)։

Վահան Թէքէեան որ 1914ին այցելած է Կէրմիր իր տպաւորութիւնը հետեւեալ կերպով կ'արտայայտէ.

«Կէրմիրը հրդեհուած քաղաքի մը կը նմանի: Ամէն փողոցի մէջ քանդուած տուներ կան, այնքան շատ որ կանգուն տուները աւելի քիչ են բաղդատմամբ անոնց: Առաջնորդս կ'ըսէ թէ բոլոր այդ տուները Հայերուն էին, որոնք մէկ-երկու տասնեակ տարիներէ ի վեր զանոնք կը լքեն ու կ'երթան, ծախելէ վերջ ... շինուածանիւթը, որովհետեւ ոչ ոք կը գնէ իբրեւ բնակարան: Մեկնող Հայերու տեղ իրաւ է թէ քանի մը Թուրքեր եկած հաստատուած են, բայց գիւղաքաղաքը կենդանացնելու անկարող եղած են անոնք: Կէրմիր, որ Պոլսոյ մէջ եւ այլուր կարգ մը ծանօթ Կեսարացի Հայերու ծննդավայրն է, վերջնականապէս մեռնելու դատապարտուած է, կ'ըսեն ինծի, որովհետեւ իր առեւտուրը դադրած է՝ չեմ գիտեր ի՞նչ պատճառաւ: Հայոց եկեղեցին ընդարձակ եւ զմբէթաւոր, ցոյց կուտայ տեղւոյն երբեմնի ճոխութիւնը: Ցանցառ կերպով ողջ մնացած բնակարաններ նոյն բանը կը յայտնեն: Աւելին. Կեսարիոյ տուներուն պէս պատերու ետին քաշուած չեն անոնք, այլ ուղղակի փողոցին վրայ նայող պատուհաններով համարձակ շէնքեր են — ինչ որ կը յայտնէ թէ Թուրքերը վախ չէին ազդեր հոս...» (ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, թ. 828):

Կէրմիրի մէջ Թուրքերը ունէին մեծ մզկիթ մը և Յոյները երկու եկեղեցիներ, որոնցմէ մին նուիրուած Ս. Կոյսին, զարդարուած է բազմաթիւ որմնանկարներով և պճնուած շատ մը պատկերներով և նկարատպեալ կաշիի (cuir gaufré) հետաքրքրական գործով մը որ կը ներկայացնէր Քրիստոսի գերեզման դրուիլը։ Այս վերջինին համար Ջինճիտէրէի օրթոտոքս համայնքը, իզուր կ'ըսեն առաջարկած է գնել, զայն ծածկելով թրքական ոսկիներու կրկնակ խաւով մը (Vital Cuinet, Ա. 319)։

Գիւղաքաղաքին մէջ կան ձիթահաններ և շրջակայքը գաճի պատրաստութեան քարերու հանքեր, և կղմինտրի և բրուտութեան գործարաններ (Նոյն էջ 319)։

ԱՆՑԵԱԼ.

Կէրմիրի հնագոյն անցեալի մասին տեղեկութիւն մը չունինք որոշ։ Գիւղին հիմնարկութիւնը թերեւս ունի շատ մեծ հնութիւն և նախնական դարերէն կու գայ ան։ Ոմանք կը կարծեն թէ Հայոց և Յունաց գործակցութեամբ հիմնուած է այս գիւղը քանի մը դար առաջ միայն։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Գիւղաքաղաքին ընդհանուր և Հայ բնակչութեան մասին տրուած թիւերը չափազանց փոփոխական են։

Հայր Ղուկաս Ինճիճեան Կէրմիրի բնակչութեան մասին ոեւէ թիւ չի տար, այլ միայն կը բաւականանայ ըսելով թէ «բնակիչք նորա են խառն, Հայք, Յոյնք եւ Տաճիկք» (Ա. 315)։



Ազգ. Պատրիարքարանի կողմէ 1872–1873ին կազմուած վիճակագրութեան մը համաձայն Կէրմիրի բնակչութեան պատկերն էր

600 տուն Յոյն
300 » Հայ
100 » Թուրք

Իսկ 1898ին Յարութիւն Նշանեանի (Արեւելք, թ. 3822) և 1903–1905ին Բնաշխարհիկ Բառարանի համաձայն, Յոյները՝ 450, Թուրքերը՝ 330 և Հայերը՝ 120 տուն էին։

Ասկէ զատ ուրիշ վիճակագրական ընդհանուր տուեալ մը չունիմ։

Գալով Հայերու թիւին, Կէրմիրցի ուսուցիչ Դանիէլ Պօյաճեանի տեղեկութեանց համաձայն Հայոց թիւը միշտ աճելու վրայ էր երբ պատահեցաւ 1873ի սովը որ մեծ վնասներու ենթարկեց Թուրք գիւղերու մէջ առեւտուր ընող փերեզակ վաճառականները։ Այս պատճառով ամառ-ձմեռ անընդհատ խանութպանութեամբ զբաղելու մտադրութեամբ այլեւայլ քաղաքներ ցրուիլ սկսան Կէրմիրցիք, որով հետզհետէ Կէրմիրի Հայոց թիւը պակսեցաւ։

1886ին Վտարանդին (Մասիս, թ. 3848) 370 տուն(1) Հայ կը գտնէ հոն մինչ Ղեւոնդ քհ. Ստեփանեան 1889ին միայն 200 տուն (Փունջ, թ 2170)։ Սակայն «1890ական թուականներուն սկսաւ ան արագ համեմատութեամբ մը անշքանալու, վասնզի Հայերը հետզհետէ եւ երբեմն զունդագունդ սկսեր էին գաղթելու աւելի բանուկ տեղեր: 1900ական առաջին թուականներուն, արդէն այդ բարգաւաճ գիւղին հայութենէն միայն ութսունի մօտ շէն տուներ կը համրուէին, իսկ 1915ի տարագրութեան հեղեղը՝ հազիւ թէ քանի մը տասնեակ(2) ընտանիք կը հաւաքէր քշելու համար Արաբիոյ խորերը» (Եղիազարեան)։

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ.

Կէրմիրի մէջ Հայերը ունէին հոյակապ գմբեթազարդ եկեղեցի մը Ս. Ստեփանոս անունով։

Այս եկեղեցին կառուցուած էր տեղը հին եկեղեցիի մը որ 1858ին այրեցաւ(3)։ 1860ին անոր նորոգութեան և գմբեթին միայն 1500 ոսկի ծախսած են Կէրմիրցիք (Յար. Նշանեան, Արեւելք, թ. 3822)։

Եկեղեցիին գաւիթին մէջ կան երեք ջրհոր և շուրջը երկու բուրաստան, որոնց մէջ 150ի չափ նշանաւոր Հայոց շիրիմներ կը գտնուէին։

Կէրմիրի անցեալ փառքին ու ճոխութեան յիշատակարանը որբացած իր ժողովուրդէն՝ անշքացման մատնուած էր վերջերը։ Երեւակայեցէք որ գիւղը այնքան ինկած էր որ հոգեւոր պաշտամունքը

(1) Այդ թուականին Հայոց թիւը այդքան ըլլալը կը հաստատէ նաև Յար. Նշանեան (Արեւելք, թ. 3822)։

(2) Տարագրութեան օրերուն հոն ապրող հայերը միայն 78 տուն էին ըստ Թէոդիկի (Հայ Եկեղեցականաց Գողգոթան. ձեռագիր)։

(3) Բնաշխարհիկ բառարան, կ'ըսէ թէ հին եկեղեցին Ս. Աստուածածին կը կոչուէր և յետ վերանորոգութեան կոչուած է Ս. Ստեփանոս։ Սակայն հաւանօրէն սխալ մը կայ, վասնզի 1806ին Հ. Ինճիճեան և 1850ական թուականներուն Ալիշան Կէրմիրի եկեղեցին Ս. Ստեփանոս անունով կը ճանչնան։

կատարելու համար քահանայ մը իսկ պահելու դժուարութեան առջեւ կը գտնուէր։

1898ին մինչ մը քահանայ իսկ չունէին, վանքի երկու քահանաներէն մին ծերացած և հեռացած էր և միւսը՝ Տ. Յակոբ քհ. Եըլանճեան՝ որ բնիկ էր և 20 տարի դասատուութիւն և գրեթէ նոյնքան տարի ալ քահանայութիւն ըրած էր իր ծննդավայրին մէջ, վախճանած էր 1898 Յուլիս 8ին։

Եկեղեցիին կից է Պարբեւեան երկսեռ վարժարանը, որ 1823ին կառուցուած է։

Այս վարժարանը Կեսարիոյ կրթական կեանքին մէջ նշանաւոր դեր կատարած է երբեմն, սակայն աւանին տնտեսական անկման հետ



ՆԵՐՔՆԱԿՈՂՄ ԿԷՐՄԻՐԻ Ս. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻԻՆ
(Պատկերին մէջ կ'երեւայ նաեւ «Թաղումը», որ իր նուրբ արուեստով բացառիկ ու թանկարժէք գործ մըն էր):

ինքն ալ անշքացած է։ 1872–1873ին հոն կը յաճախէին 200 մանչ և 120 աղջիկ աշակերտներ։ Այդ թուականներուն վարժարանին ծախքը կը հայթայթէր Պարբեւեան ընկերութիւնը, որ տարեկան մինչեւ 120, 150 200 և երբեմն նոյնիսկ 250 ոսկի կրցած է տրամադրել վարժարանին (Յար. Նշանեան, Արեւելք, թ. 3822)։ 1886ին ունէր 95 աշակերտ, և 1901ին՝ 115 (80 մանչ և 35 աղջիկ) և ունէր երկու ուսուցիչ և ուսուցչուհի։ Ամսական 250 ղրշ. ծախքը կը հայթայթուէր կէս առ կէս եկեղեցւոյ սնտուկէն և աշակերտներու թոշակներէն։

Ուշագրաւ իրողութիւն մըն է որ Կէրմիրցիք միշտ կրթական գոր-



ծին համար զոհաբերութիւն ընելու չեն վարանած։ 1907ին թղթակից մը (տես Սուրհանդակ, թ. 2295) կը գրէ թէ «տարեկան մինչեւ երեք ոսկի թոշակ վճարող աշակերտ կայ: 50-60 աշակերտ իրենց կարողութեան համեմատ, համաչափաբար քանի ոսկի կը վճարեն: Եկեղեցիին հասոյթէն զատ, աշունքը ամէն տուն յօժարակամ իր մացու կովին մորթը մէկ մէճիտի դպրոցին կը ծախէ, որուն շահէն 19 ոսկի հասոյթ մը կը գոյանայ»:

Վարժարանը ունէր անցեալ փառքի օրերու յիշատակ, բաւական ճոխ թանգարան մը 350 կտոր գիրքերով և քանի մը ձեռագիրներով։

ՀԱՅՔ 'Ի ԿԷՐՄԻՐ

Հայք գաղթած են ըստ ոմանց Կարինէն և ըստ այլոց Փրնուզէն (Բնաշխարհիկ Բառարան)։

Կեսարացւոց և տեղացիներու մէջ պահուած աւանդութեան մը համաձայն Պարսկաստանէն եկած են, ինչ որ Կարինէն եկած ըլլալու պատմութեան շատ չի հակասեր։ Կեսարացիք թերեւս առ նախանձու կ'ըսէին թէ Կէրմիրի Հայոց նախնիքը մաղագործ բոշաներ էին (անձնական տեղեկութիւն Տիար Հայկ Ինայէթեանէ քաղուած)։

Ամէն պարագայի մէջ գիւղը կը թուի ըլլալ հայկական հիմնարկութիւն և իր բուն անունն է Կարմիր կամ Կարմրակ որ Թուրքերը յետոյ փոխած են Կէրմիրի: Սակայն գաղթականութիւնը ե՞րբ և ի՞նչ պայմաններու մէջ կատարուած ըլլալու մասին ո՛չ մէկ ստոյգ և վաւերական տեղեկութիւն կայ։

Ըստ Դանիէլ Պօյաճեանի տեղեկութեան, աւանդութեան մը համաձայն Կէրմիրի նախկին բնակիչները, այժմու գիւղին տեղաւորուած ձորէն 25 վայրկեան հեռու դէպի հիւսիս, Սեբաստիա տանող ճամբուն մօտ, Կարմիր Հող կոչուած տեղ մը կը բնակին։ Հոն մինչեւ վերջը կը մնար Ս. Թորոս անուն մատուռ մը, որ կ'երեւայ թէ Հայք Յունաց հետ ընկերակցութեամբ կերտած էին և միասին ալ գործածած, որովհետեւ անոնք ալ «Այիօս Դէօդորոս» կ'անուանէին զայն և միշտ ուխտի կուգային մոմերով, ձէթերով (ըստ Գ. Ս. Դաւիթեանի տեղեկութեան)։ Այս թաղը «Թէրէմ Պաշը» կ'անուանուէր որովհետեւ կատարելապէս կարմիր էր երկրին կեղեւը, կակուղ ու դիւրութեամբ փորելի, ինչպէս Ս. Թորոսի մատուռը փորուած էր, նոյն կարմիր խաւերէն բաղկացած բլուրի մը արգանդը (Նոյն)։ Սակայն հոն հաստատուած բնակիչները Եէնիչէրիներուն ամէն անցուդարձին անոնց պատճառած անտանելի կեղեքումներուն չկրնալով հանդուրժել, կ'ամրանան ձորակին արեւելեան կողին մէջ գտնուած մեծ քարայրին մէջ, դրան առջեւ հաստատելով խոշոր երկանաքար մը ամրափակ։ Ի վերջոյ կը համարձակին տարածուիլ ձորակին մէջ և հոն կը հաստատուին, և իրենց նախկին բնակավայրին «Կարմիր Հող»ին անունով ձորակն ալ յորջորջելով Կարմիր կամ Կէրմիր (Դանիէլ Պօյաճեան):

Գաղութին սկզբնաւորութեան Պարսկաստանէն ըլլալուն իբր փաստ կրնայ ներկայացուիլ ընտանեկան մականուններու պարսիկ բառերով կազմութիւնը, ինչպէս Շահմիրեան, Նէվրուզեան, Փօլատեան, Պուհարեան, իսկ կարգ մը ուրիշ մականուններ, ինչպէս Տավուտեան, Ջօրթեան, Իպիշեան, կը մատնանշեն Հայաստանի հիւսիս արեւելեան կողմերը (Դանիէլ Պօյաճեան)։

Կէրմիրցիներու և Կեսարացիներու նախկին բնակավայրերու

նոյնութիւնը կը հաստատեն նաև այն նմանութիւնները որոնք գոյութիւն ունին այս երկու վայրերու Հայոց սովորութիւններուն և բարքերուն մէջ։

Առաջին ինծի ծանօթ գրաւոր վաւերագիրը որ կը յիշէ Կէրմիրը 1574ին գրուած Մաշթոց մըն է, ուր կը տեսնենք թէ Պայ Խարուն անուն կին մը որ «ի մայրաքաղաքն Կեսարիոյ ի գիւղն Կարմուրայ» կ'ապրէր «իւր հալալ ինչից» կը գնէ այս գիրքը և կը նուիրէ Մանճուսունի Ս. Թորոս եկեղեցիին։

Այս յիշատակարանը անժխտելի փաստ մըն է որ Կէրմիր գէթ առնուազն ԺԶ. դարուն արդէն հաստատուած էր, եթէ աւելի առաջ գոյութիւն չունէր։

1602ին «Մեկնութիւն Տոմարի» անուն ձեռագիր մը գրուած է «ի Կարմերք Կեսարիոյ» որ դարձեալ Կէրմիրն է։

1637ին Ճաշոց մը գրուած է «ի Կարմերի Կեսարիոյ»։

Այդ թուականէն յետոյ Կէրմիր կը յիշուի յաճախ զանազան վաւերագիրներու մէջ։

Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ վիճակներու շարքին զայն կը յիշատակեն հաւասարապէս (1760ին) Սիմէոն Կաթ. Երեւանցի և իր գրագիրը Երեմիա Դպիր Օշականցի, (տես Ջամբռ և Դիւան Հայոց Պատմ. Գ., էջ 788)։

Հ. Ղուկաս Ինճիճեան, որ 130–140 տարի առաջ գիրի առած է իր գործը, Կէրմիրի մասին կու տայ հետեւեալ հետաքրքրական տեղեկութիւնները.

Կէրմիր կամ Կարմիր եւ Կարմրակ. է երեւելի ի մէջ գիւղօրէից Գայսէրիոյ եւ իւիք իրօք քան զնոյն իսկ Գայսէրի. մինչեւ ի բնակչաց կոչիլ Փոքր Մըսըր: Բնակիչք նորա են խառն, հայք, յոյնք եւ տաճիկք, որք են փարթամք, զգենուն փառաւորս, երջին մեծագին երիվարաւ, դնեն ի գլուխս զփակեղն տաճկաց, եւ միայն ի գնալն ի քաղաք ցուցանեն զկապուտանին ծայր կտաւոյն 'ի տարբերութիւն տաճկաց. ի սոցանէ են մեծամեծ իշխանք Գայսէրիոյ եւ ի Թալասէ(1). եկեղեցին հայոց յանուն սրբոյն Ստեփաննոսի. ջուր ջրհորոց նորա քաղցր. մերձ առ իւր ունի զուխտատեղի սրբոյն Գէորգայ» (տես Աշխարհ. Ասիա, Ա. հտ. էջ 315)։

Այս Ս. Գէորգի ուխտատեղին —որ Ալիշան ալ կը յիշէ— գիւղին արեւելեան հարաւածայրը քառորդ ժամ հեռու կը գտնուէր. գիւրափլխուր կարմրագոյն քարէ (քիս) զանգուածի մէջ փորուած, աչք աչք խոռոչներ են որոնք Յոյները Այ-Եօրկի և Հայերը Ս. Գէորգ կը կոչէին։

Ծագումով կը թուի յունական վանքի երբեմն Յոյն քահանաներ պատարագ կը մատուցանէին հոն, անշուշտ հին աւանդութեան մը իբր մնացորդ։ Յոյն կիներ իբր ուխտատեղի հոն մոմ կը վառէին, կ'աղօթէին և գերբուկ պատերուն վրայ փոքրիկ քարի կտորներ կը փակցընէին իրենց ուխտին ընդունական ըլլալուն իբր նշանակ։

Հայ կիներն ալ անոնց հետեւողութեամբ երբեմն կ'երթային Կիրակի ցերեկները։

(1) Ալիշան իր Աշխարհագրութեան մէջ (էջ 559) Կէրմիրի վրայ խօսելով կ'ըսէ «յորում բնակին հոխ եւ կորովիք 'ի Հայոց ընդ Յունաց և Տաճկաց»։



ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

«Իր աւերուած գեղեցիկ շէնքերուն մնացորդները ... բաւականաչափ պերճախօս են հաստատելու համար թէ հոն ապրած է շէնշող ու շինարար ժողովուրդ մը» (Եղիազարեան), որ շնորհիւ իր առեւտրական ձեռներէցութեան կրցած է նիւթական բարգաւաճ օրեր ապրիլ։ Կէրմիրի բնակիչներուն մեծ մասը երկրագործ էին. կային նաև դերձակ, հիւսն և որմնադիր արհեստաւորներ։ Կիներու մէջ կային ասեղնագործութեամբ, կապերտագործութեամբ և գորգագործութեամբ զբաղողներ, սակայն անիկա չէր ներկայացներ առեւտրական գործօն շուկայ մը։ Ուստի գործի մարդիկ քիչ թուով Կեսարիա կ'երթային առեւտուրով, մէկ մասը՝ Պոլիս, Իզմիր, Սամսոն, մէկ մասը Պօզուգի շրջանը՝ երկրագործական բերքերու առեւտուրով զբաղելու, իսկ ոմանք Ուրֆա, Մուսուլ և այլուր, բերելու համար ուղտ, կով, եզ, գոմէշ, որպէսզի ծախեն գիւղացիներուն 1-2 տարիէն վճարելի։ Այս գործն ընողներ ճէլէպճի կը կոչուէին։

Պանդխտութիւնը այնքան ծաւալած էր որ աղէտ մը դառնալ սկսած էր նոյնիսկ անցեալ դարուն կէսերէն, մասնաւորապէս այն պատճառով որ հարիւրաւոր բացականերու զինուորական տուրքերը կը ծանրանար մնացողներուն վրայ։ Այնպէս որ 1865ին Կէրմիրցիք կը փորձէին կառավարութեան օժանդակութեամբ բռնի Եօզղատ գացող Կէրմիրցիները դարձնել իրենց ծննդավայրը (Վարագայի Հավասիս, 1865, թ. 133)։

Կէրմիրէն այլուր պանդխտող այս առեւտրականներէն շատեր 5-6 տարին անգամ մը սիլայի (այցի) կու գային իրենց ծննդավայրը, իսկ մերձաւոր տեղեր գտնուողները, մանաւանդ մօտակայ գիւղերը փերեզակութեամբ շրջողները, ձմեռուան երեք ամիսները ընտանեկան յարկին մէջ անցնելու համար, երբ արդէն եղանակին խստութեան պատճառով, երթեւեկը կը դժուարանար, իրենց առեւտրավայր գիւղերէն կը դառնային հայրենիք։

Խիստ շատերը լաւ ձիագարման ըլլալով բուն Բարեկենդանի ութ օրուան մէջ ձիարշաւով և ճոկանախաղով (ճիրիտ) կ'զբօսնուին, երկսեռ խուռն բազմութեան ներկայութեանը, ձորակին արեւելեան դարաւանդին վրայ տարածուող դաշտագետնին մէջ, հանդիսատեսները լոկ մարզիկ Հայ երիտասարդները և հին վարպետները ըլլալով։

Միայն Վարդանանցի Հինգշաբթին եկեղեցիին մէջ կատարուած հանդէսին ներկայ կը գտնուէին իբր պարտականութիւն և ամբողջ շաբթուան մէջ միայն այդ օրը կ'ընդհատուէին ձիարշաւը և ճոկանախաղը, ինչպէս նաև խրախճանքները և խաղերը։

Այդ օրերուն հարիւրաւոր երիտասարդներ զրպկաներ (պրակազգեստ) հագած, ձիերու վրայ աշտարակուած, սրարշաւ գնացք մը կը կատարէին Թիրէմ Պաշրէն մեկնելով, փողով և թմբուկով, Տէրէ վանքի Ս. Սարգիս մենաստանը ուխտի երթալու համար։

Բուն Բարեկենդանի օրը խրախճանքները վերջ կը գտնէին և այն օրը ամէն մարդ պարտաւոր է եկեղեցի գտնուիլ։ Վայ է եկեր այդ օրը եկեղեցի չգտնուողին։ Ինչ դասակարգի ալ պատկանէր, զայն հակառակ կողմէն էշ նստեցուցած աւանին մէջ կը շրջեցնէին, աւանդական հնօրեայ սովորութեամբ մը։

Գիւղին իբր ճեմավայր կը ծառայէր գարնան և ամառուան իրի-

կուններըը արեւելեան բարձրաւանդակին վրայի պարտէզներուն ետեւը գտնուած տափաստանը՝ զայլա կոչուած, ուրկէ չարաթը երկու օր ջուր կը հոսի թէ ջրամբարները լեցնելու եւ թէ ճերմակեղէնները լուալու համար։

Կէրմիրի մէջ տիրող լեզուն թուրքերէն էր, սակայն ըստ Դանիէլ Պօյաճեանի հաւաստումին, — որ տեղացի է եւ հոն երկար ապրած — բնաւ հայերէն չգիտցող փերեզակ Հայ վաճառականներ մինչեւ ԺԹ. դարուն կէսերէն առաջ այլազգիներէն ծածուկ իրարու բան մը իմացնելու համար Թուրք գիւղերու մէջ արկոթեան լեզու մը կը գործածեն եղեր կէս մը պարսկերէն, կէս մը քրդերէն բառերով։

Այսպէս կ'ըսէին նան տէօյմէք . . . = հաց ուտել
սատտան տէճ կէվրէք = հարիւրէն 10 պակաս
քեօվ . . . . . . . = Թուրք
կէվրէք . . . . . . = էրիկ մարդ
տանաւ . . . . . . = կնիկ
ժէրիք . . . . . . . = աղջիկ
ավզուն . . . . . . = լաւ, գեղեցիկ
պէտ . . . . . . . = գէշ
պախսամ . . . . . = յոյն
ճէվ . . . . . . . . = գարի
քէվիք . . . . . . . = յարդ

Կէրմիր մարդ արտադրելու տեսակէտով մեծ դեր կատարած է եւ տուած է մանաւանդ Կեսարիոյ եւ վիճակներուն համար պատրաստուած ուսուցիչներ, մանաւանդ շնորհիւ իր վարժարանին 1862էն մինչեւ 1880ական թուականները ունեցած փայլին եւ կարող ուսուցիչներուն, որոնց վրայ պիտի անդրադառնանք մտաւորական կեանքին մէջ։

Նոյնպէս Կէրմիր կայանը եղած է յաջողակ առեւտրականներու որոնք մինչեւ հեռաւոր երկիրներ, ընդարձակ գործառնութիւններ ունեցած են։ Անոնք գիտցած են, իրենց հարստութենէն բաժին հանել իրենց ծննդավայրին զարգացման եւ բարգաւաճումին։

Առեւտրական դասակարգին մէջ մանաւանդ երեւելի եղած են Սահակեան եղբարք, Մանուէլ Մանուէլեան, Կարապետ Թապիպեան, Յովհաննէս Պօյաճեան, Խաչատուր Դաւիթեան եւ այլ, որոնք զոհողութիւններ ըրած են ազգին եւ եկեղեցւոյն համար։

Սահակեան եղբայրներէն մանաւանդ Սերովբէ Սահակեան չափազանց կարեւոր դեր մը կատարած է իր գրաւած դիրքովը։ Երբեմն եղած է Կեսարիոյ Իտարէ Մէճլիսի անդամ։ Ինքն է որ Կէրմիրի վարժարանին զարգացման սատար հանդիսացած է նիւթական կարեւոր զոհողութիւններ ընելով։ Այնպէս որ Կէրմէրցիք իրեն կը պարտին իրենց վարժարանին փառքի շրջանը։

Կէրմիր ծնունդ տուած է նաեւ արհեստագէտներու մանաւանդ հին նշանաւոր ճարտարապետներու, որոնցմէ կը յիշուի Պինիաթ Ղալֆա Կարմրուկցի որ 1733ին Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին ունի կանգնած խաչ-քար մը, եւ 1767ին Նշան Խալֆա մը Կեարմիրցի որուն ի նպաստ Էջմիածնի ըրած կտակը գործադրած է իր որդին Խօջա Սէֆէրը (տես Դիւան Հայոց Պատմ. Գ. էջ 635)։



ԱՐԵԱՆ ՏՈՒՐՔ.

Կէրմիր ալ վճարեց իր արեան տուրքը հայկական վերջին եղեռնին։ Տեղահանութեան սկիզբը ձերբակալուեցան աւանին բոլոր երիտասարդները եւ չլթայակապ ճամբայ հանուեցան դէպ ի Կէմէրէկ, որուն ճամբուն վրայ Մուտարասընի մէջ սպանուեցան ամէնքն ալ։

Յետոյ մնացեալ բնակիչները տարագրուեցան դէպ ի Սուրիա, Ազիզիյէ, Ալպիստան-Մալաթիա ճամբով եւ գրեթէ բոլորն ալ սպանուեցան Ֆուրունճըլարի մէջ։

Կէրմիրի Հայոց վերջին հոգեւոր պաշտօնեան էր Տ. Ստեփան քհ. Գույումճեան. ծնած 1865ին, բնիկ տեղացի, աշխարհական անուամբ Աբրահամ, ուսած ծննդավայրին Պարթեւեան դպրոցը, եւ ապա ուսուցիչ անդ եւ 'ի Կեսարիա։

Քահանայ ձեռնադրուած է 1898ին Ստեփան եպս. Սանտալճեանէ։

«Այս հաւատընտիր եւ Քրիստոսազօր երէցը՝ թուրանեան եռաճխէպի եւ մահուան սպառնալեաց ներքեւ կ'իսլամանայ, յետոյ կ'աքսորուի Հալէպ եւ կը պատռէ գլխուն փաթթոցը, Հայ Քրիստոնէի բուն անունովն եւ սիրտովը վախճանելով հոն՝ աղցաւոր վիճակի մէջ» (Թէոդիկ, Հայ եկեղեցականութեան Գողգոթան):

ԿԷՐՄԻՐ ՈՉ ԵՒՍ.

Զինադադարէն յետոյ Կէրմիր դարձան միայն 30 ընտանիքի (70-80 անձ) չափ։

Թուրքերը քանդած էին Ս. Ստեփանոս հոյակապ եկեղեցիին սեղանը, ո՞վ գիտէ ինչ նպատակով։

Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան թեմական այցելութեան առթիւ կ'այցելէր նաեւ Կէրմիր (1919ին) երբ տակաւին Փոքր Ասիոյ Յոյները չէին մեկնած փոխանակութեամբ։ Տեղացի Յոյն քահանաները զգեստաւորուած, մոմեղինօք եւ խնկարկութեամբ գիւղին մուտքէն կը դիմաւորեն եւ կ'առաջնորդեն նախ Հայոց եկեղեցին եւ ապա իրենց եկեղեցին եւ զանգակահարութեամբ կը հրաւիրեն ժողովուրդը, լսելու Հայոց Առ. փոխանորդին քարոզը եւ ստանալու օրհնութիւնը։

Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան Ս. Ստեփանոս եկեղեցիին մէջ ժամերգութիւն կը կատարէ եւ կը յորդորէ պզտիկ սեղան մը շինել։

Սակայն դժբախտաբար Թուրք եւ Հելլէն պատերազմէն յետոյ երբ Յոյները լքեցին Կէրմիրը այդ 20 տուն Հայերն ալ այլեւս չկրցան բնակիլ հոն եւ ցրուեցան։

Այսօր ոչ մէկ Հայ կայ Կէրմիրի մէջ։

V

# ՊԱԼԱԿԷՍԻ ԿԱՄ ՊԷԼԷՅՍԻ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՊԱՏ.

«Կէրմիրի կռնակէն, այսինքն արեւելեան բլուրներէն մէկուն մէկ կէտէն զատուած անկանոն ճամբու գիծ մը կ'երկարի դէպի արեւելք։ Ան կ'անցնի մօտաւորապէս երկու փարսախ տեւող բլրադաշտին վրայէն. գրեթէ քերելով կ'անցնի Ճրլավուգ կոչուած աղտոտ, բայց ականապարար դիրքի մը վրայ հաստատուած Թրքաբնակ գիւղը։ Մինչեւ

այդ՝ ճամբան սկսած է խոնարհելու, յետոյ միրճուած է անհաւասար բարձունքներու շարքով մը պարսպուած ձորի մը մէջ։ Գեղեցիկ ու լայնարձակ է այդ ձորը, և սակայն չես գիտեր ինչո՞ւ սարսուռ մը կը գրաւէ քեզ՝ երբ անոր կեդրոնն հասնիս։ Շուրջդ ամէն կողմէ անհեթեթ ժայռեր կախուած են դաւադիր ու մութ ստուերներով։ Դէպի հիւսիս՝ բարձունքին կատարը կ՚երեւի աւերակներու դէզ մը. Մնացորդն է ան Ս. Աղօթիկ կոչուած վանքի մը որ անյիշատակ տարիներէ ի վեր արդէն ամայացած է։ Ասդին ուրիշ բարձունքի մը վերին կողերուն վրայ կ՚երեւի աւելի ընդարձակ աւերակոյտ մը, — իր անունով ու բոլոր յիշատակներով կորսուած գիւղի մը աւերակները։ Իսկ ասոր մօտն ու շուրջը քանի մը մատուռներու յետին խլեակները որ «Ճգնարան» կ՚ըսուին և բազմաթիւ բաց գերեզմաններ, որոնք կարծես թէ բորեններու վոհմակի մը հարստահարութենէն անցած են։

«Այս ակնահրապոյր բայց սրտամաշուսւ կիրճը կը կոչուի «Աւետիֆ տէրէսի»: Ան համբաւաւոր դարձած է մանաւանդ 1893էն ասդին երբ Հնչակեան ծանօթ հինգ հերոսները հարիւրաւոր Թուրք հորդաներու մէջէն ողջ առողջ դուրս ելան այդ կիրճէն իրենց ետին ձգելով քանի մը Թուրք սպաննուածներ և Մազհար պէյ անուն վիրաւոր հարիւրապետ մը որ մահմետականներու շրջանակին մէջ դիւցազնի համբաւն ունէր։

«Հեղեղատին եզերքէն սկսելով ուղին գորշագոյն օձի մը երեւոյթով կը սողայ սեպ բարձունքէ մը։ Կիրճին միակ ելքի ճամբան է ան։ Յետոյ նորէն կը խոնարհի, կ՚անցնի քանի մը բլրակներու քսուելով ու կը դառնայ նոր ու աւելի բարձր բլուրի մը կողը։

«Այդ տեղէն կը նշմարուի գիւղ մը որ թիկունքը տուած է այս վերջին բլուրին իսկ երեսը դարձուցած դէպ ի հիւսիս։ Պալակէսի զուտ հայաբնակ գիւղն է ան։

«Ակնապարար է իր դիրքը ու կ՚իշխէ տեսարանի մը վրայ որ իսկապէս հիանալի է։ Նախ ուշադրութիւնդ կը գրաւէ ինքը՝ գիւղը։ Ակնահաճոյ են իր տուները. վասնզի ընդհանրապէս երկյարկանի են և շինուած սրբատաշ քարերով։ Յետոյ կը նկատես որ բնակիչները առոյգ երեւոյթ, կարմրորակ թուշեր և երջանիկ արտայայտութիւն ունին։ Այս երկու երեւոյթները բաւական են հաւաստելու անցորդը թէ բարեկեցիկ գիւղ մըն է որ կ՚ողջունէ։ Իրաւ ալ աշխատութեան քաղցր ժխոր մը կը զգուէ այցելուին լսողութիւնը — դանակագործներու մուրճին ձայնը և բրուտներու ճախարակին խռխռոցը։

«Իսկ երբ մտադրութիւնդ դարձնես գիւղէն դուրս ու անոր շուրջը, կ՚զմայլիս առաջդ պարզուած տեսարանին վրայ։ Կը տեսնես հարուստ բուսականութիւն մը որ գիւղը պատած է ամէն կողմէն, վերէն՝ սողոսկելով մինչև լերան կատարը, վարէն՝ տարածուելով մինչև լերան ստորոտը և միրճուելով մինչև դաշտին խորերը, ու երկու կողմերէն՝ պարուրելով լերան կողերը։ Բաց գրքի պէս աչքիդ առջեւ են խնամով յօտուած այգեստանները, պատուականապէս հերկուած, մաքրուած բուրաստանները, ուր ձմերուկը, սեխն ու վարունգը իրենց վայելած անստգիւտ խնամքով յղփացածի երեւոյթով ընկողմանած են, բանջարանոցները ուր, զինուորական կարգապահութեամբ օժտուած եգիպտացորենը, նաև կանանչ պամիան ու լուբիան, մանիշակագոյն սմբուկը, կարմրուկ փիրէնկը (թոմաթէս), սո-



մանաձև դեղին ու սերի գոյն ծաղիկներով դդմենին, նորահարսի թագը յիշեցնող արեւածաղիկները, ինչպէս նաև իրենց պտուղները կծծիօրէն հողին տակ թաքցուցած սոխի, սխտորի, ճակնդեղի ու գետնախնձորի բոյսերը. վերջապէս որովայնապարար կաղամբը՝ կարծես կը յոխորտան իրենց պարզած հարուստ սեթեւեթին վրայ։ Ու ասոնց ամէնուն հետ՝ կը նկատես նաև մրջիւնի աշխատութիւնը Պալակէսեցիին որ կանգ կ՚առնէ ամէն մէկ բոյսի, ծառի և տունկի առաջ, կը յօտէ, կը մաքրէ, կ՚աղբէ, կ՚ոռոգէ անխոնջ ինքնանուիրումով սրբազան աշխատութեան։

«Ու տակաւին գիւղին ետին, լերան կռնակը օժտուած է նոյն փարթամ բուսականութեամբ. մանաւանդ որ այդ կողմը մարդուն աշխատութեան բնութիւնն ալ լծորդած է իր շնորհքը։ Այսպէս քալելով այն կածանէն որ գիւղին արեւելեան ծայրէն կը սկսի, ու դառնալով լերան կողը, ինքզինքդ կը գտնես չնաշխարհիկ տեսարանի մը առջև. դիմացդ, ձորէն անդին բարձրացած է բարձր լեռ մը որ կատարին ունի շղուականի ձեւով հողային ուռուցք մը. ասդին, լեռը որու կողէն կը քալես կանանչներու մէջ կը ծփայ. ճամբան կ՚անցնի առուակի մը եզերքին քսուելով, յետոյ կը զատուի անկէ խոնարհելու համար դէպ ի ձորը։ Կը տեսնես ձախ կողմդ քարաշէն կամար մը լայն բայց նեղ անրակով. ան երկու հանդիպակաց բարձունքներու հաղորդակցութեան միակ գիծն է, և սակայն կամուրջ մը չէ. անյիշատակ դարերու մէջ շինուած ջրմուղի գիծ մը միայն ակօսած է զայն։ Կը շարունակես պտղատու ծառաստաններու մէջէն սողացող ու կրկին վեր բարձրացող կածանը. կ՚անցնիս նոր բլուրի մը դարձքը և ահա ինքզինքդ կը գտնես փոքրիկ աւազանի մը առջև. ապառաժներու մէջտեղ խորացած բնական լոգարանն է ան գիւղին տղոց։ Վարդապետ կէօլի(1) կ՚ըսուի ան։

«Անկից անդին այլեւս ճամբայ չիկայ, բայց միայն ժայռերու մէջ մարդկային քայլերու տարտամ հետքեր. երկու կողմերդ կը նշմարես ժայռեր՝ ճեղքրտած, տեղ տեղ իրարմէ բաժնուած. կ՚երեւի թէ անյուշ դարերու մէջ երկրաշարժը ահաւոր գործունէութիւն մը ունեցած է հոն։ Աջ կողմդ, այսինքն արեւմտեան բլուրի կողին կը նշմարես քարանձաւի մուտք մը բոլորաձև. ան ձորին մօտ քսան ոտք բարձր է, ու շուրջը բացուած են անթիւ փոքր ծակեր։ Պալակէսի նշանաւոր քարայրն է այն որու համար գիւղացին կը հաւատայ թէ ծայր չունի, և որ իր ու շրջակայքի յեղափոխականները հիւրասիրած է ծոցին մէջ յաճախ։ Անոր ճիշդ քովիկը ժայռուտ ցուցունքի մը վրայ կ՚երեւի աւերակոյտ մը մասամբ խարակներով պարսպուած. Ս. Պարսամայ վանքին յետին մնացորդն է ան, և կը համարուի Պալակէսի հարաւային սահմանաքարը։

«Գալով գիւղին ազգային հաստատութիւններուն, փոքրիկ ու վայելուչ եկեղեցի մը և պարզուկ դպրոց մը կը կազմեն Պալակէսեցիին զուրգուրանքի առարկաները։ Եւ սակայն ասոնց բոլորէն աւելի գիւղացիին սիրածն է տքնաջան աշխատութիւնը։ Արդարև Կեսարիոյ փոքր գիւղերուն մէջ միակն է ան որ ունի իւրայատուկ արհեստական արտադրութիւնները։ Իր հողէ կուժերը կ՚արտածէ Կեսարիա, շրջանները

(1) Այս անունը առած է իբր թէ վեղարաձև ըլլալէն։

և մօտակայ ուրիշ գաւառներ. իսկ իր գրպանի դանակները, որ տեղական բարբառով «չագը» կ'ըսուին, մեծ քանակութեամբ կ'սպառին արեւմտեան և հիւսիսային Փոքր Ասիոյ ամէն կողմերը, ինչպէս նաև Թուրքիոյ, Պաղեստինի և Եգիպտոսի բոլոր ծովեզերեայ քաղաքներուն մէջ։

«Պալակէսիի դաշտային բուսականութիւններուն մօտը, թեթև մը խորացած գետնի մը վրայ կ'երևի շինութիւններու խումբ մը։ Ցած ու հինաւուրց պարիսպ մը կը շրջապատէ զայն։ Ս. Դանիէլի վանքն է ան։

«Իր բախտին լքուած հաստատութեան մը սրտաբեկիչ երևոյթը կը պարզէ ան...» (Եղիազարեանի Ձեռագիր):

Պալակէսի կ'արտադրէ արմտիք, ծիրան, տանձ, խնձոր, սերկեւիլ, դամոն, սին և ընտիր խաղող՝ ձմրան անուշակ գինի պատրաստելու համար։ Ամէն տուն գրեթէ իրեն մասնաւոր խաղողի այգին ունի։

Կլիման տարուան չորս եղանակներուն համար ալ բարեխառն է, իսկ ջուրը, հակառակ իր դիրքին գեղեցկութեան, առողջարար օդին և միրգերու առատութեան, շատ նուազ է։

ԱՆՑԵԱԼ.

Պալակէսի նախապէս յունական գիւղի մը կամ բնակավայրի մը տեղը պէտք է ըլլայ, նոյնիսկ անունէն հետեւցնելով։

Գիւղին անունը կ'ստուգաբանուի զանազան կերպով։ Ոմանք կ'ըսեն թէ գիւղը ընկողմանած ըլլալով հաստաբեստ բլրակի մը կուշտը, իր դիրքին պատճառով ըսուած է Կէսի (= բարձր)։ Բայց որովհետեւ իր հաստատութենէն շատ վերջը, Ս. Կարապետի վանքէն 20 վայրկեան դէպի հիւսիս կազմուած է համանուն ուրիշ գիւղ մը — վերջը զուտ յունաբնակ, սակայն երբեմն հայաբնակ — առաջինը կոչուած է Պալա-Կէսի (= Հին կէսի) (Մելքոն Ասատուր, Բիւզանդիոն, թ. 3433)։ Այս ստուգաբանութեան համաձայն է նաև Քիր. Լէվիտիս որ կը կարծէ տեղւոյն անունը Պալէա Կասեանի (Παλαιά Κασσιανὴ = Հին կասի) (Բիւրակն, 1899, էջ 602)։ Ոմանք ալ կը մեկնաբանեն անունը, իբր Վերին-Կասի: Իսկ Կասի (= կայսր) և Պալա-Կասի = Պալատ կայսեր ստուգաբանութիւնը որ գաւառին Խիկարը՝ Եւքառացի Կարապետ վարժապետի գիւտն էր, աւելորդ է ըսել թէ ի՞նչ արժէք կը ներկայացնէ։

Ամէն պարագայի մէջ տեղւոյն յունական հնօրեայ բնակավայր մը ըլլալը կասկածի տակ չի կրնար ձգուիլ վանքի վաղեմի բնակութեան հետքեր կան գիւղին շուրջը, ինչպէս անոր հարաւային կողմը, կըռնակը գտնուած բերդը աղաւնետուններով։ Այդ բերդին մէջ շատ մը և բաւական ընդարձակ անձաւներ կային, որոնց մէկ քանիներուն մէջ անտուն ընտանիքներ բնակութիւն հաստատած էին (Ս. Կիւլլէնեան, Սուրհանդակ, 1900 Օգոս. 8, թ. 2269)։

ՀԱՅԵՐՈՒ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ.

Հայերը հոս հաստատուած պէտք է ըլլան վաղուց, այսինքն մօտաւորապէս ԺԱ. դարուն, Կապադովկեան Հայ ճորտ թագաւորութեանց շրջանին, որուն գէթ աւանդութեամբ կապուած էր մերձակայ Ս. Դանիէլի վանքը։

Իսկ եթէ Պալակէսիի Հայերը տեղափոխուած են Կէսիէն, այդ տեղափոխութիւնը ամէնէն ուշ պէտք է կատարուած ըլլայ ԺԷ. դարուն կէսէն յետոյ և ԺԸ. դարուն կէսէն առաջ, վասնզի ցուցակի մը մէջ որ 1661էն յետոյ Կեսարիոյ վիճակին պտղիններուն քանակը ցոյց կուտայ այն անունը յիշուած է, ինչպէս յիշուած է Պելագաա ուղղագրութեամբ Սիմէոն կաթողիկոսի Ջամբռին մէջ։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Այս զուտ Հայաբնակ և հայախօս գիւղը որ Կեսարիայէն դէպի արեւելք 3 ժամ (իբր 9 մղոն) հեռաւորութիւն ունի, ըսուած է թէ 1806ին ունէր 120 տուն Հայ բնակիչ (Հ. Ինճիճեան. Աշխարհ. Ա. 315), 1872–73ին՝ 100, և 1886ին՝ 150 (Վտարանդին. Մասիս, թ. 3848), 1902ին՝ 200 (Պ. Յ. Փանոսեան, Մանզումէ, թ. 220) և 1906ին՝ 160 (Ս. Կիւլլէնեան, Սուրհանդակ, թ. 2269) և 1915ին՝ 186 տուն (Թէոդիկ, Գողգոթան Թրքահայ Եկեղեցականութեան) բնակիչ։

Ուրեմն կրնանք ըսել թէ անիկա շուրջ 200 տնուոր Հայ գիւղ մըն էր։ Թէքէեան կ'ըսէ թէ «գիւղին ստար տարի առաջուան բնակչութեան, որ ամբողջովին Հայ է, կէսէն աւելին Ամերիկա գացած է եւ անոր ղրկած դրամովն է որ գիւղը կ'ապրի հիմա» (ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, թ. 827)։

ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ.

Պալակէսի ունէր Ս. Խաչ անուն եկեղեցի մը, անշուշտ հնուց կառուցուած և քանիցս վերաշինուած։

Ունէր նաև Տանտեան անուն վարժարան մը ուր 1872-73ին կը յաճախէին 70 մանչ և 25 աղջիկ աշակերտ։ Դպրոցական ծախքն էր տարեկան 2600 ղրշ. որ կը հայթայթուէր ժողովուրդին և դպրոցին Նըպաստամատոյց Ազգասիրաց Ընկերութենէն: 1883ին այս ընկերութիւնը վերակազմուեցաւ և իր դրամագլուխը գործածեց կանոնաւոր վարժարան մը բանալու և նոյնչափ տեղն շարունակեց, բայց ստակին հետ դպրոցն ալ լմնցաւ (Վտարանդին, Մասիս, թ. 3848)։

1901–1908 շրջանին Տաճատեան վարժարանը ունէր 70 աշակերտ (50 մանչ 20 աղջիկ) և 200 ղրշ. ամսական ծախք որուն կէսը կը գոյանար աշակերտաց թոշակէն և կէսը՝ կ'տացուէր Եկեղեցիին սնտուկէն։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

Պալակէսիցիք աշխատասէր, չարքաշ և վառվռուն են։ Ամառ և ձմեռ շարունակ 14 ժամ կ'աշխատէին իրենց հնոցին առջեւ։ «Պալակէսիի ժողովուրդը իբրեւ դանակագործ համբաւաւոր է բոլոր երջաններու եւ նոյնիսկ Կեսարիոյ մէջ, թէեւ հիմա (1915) այդ արհեստն ալ լքուած է մասամբ եւ գիւղին մէջ մնացող կիներն ու աղջիկները զարգացեինութեամբ կ'զբաղին որ աւելի շահաբեր է քան դանակագործութիւնը» (Վ. Թէքէեան, Ժողովուրդի Ձայն, թ. 827):

Ժամանակաւ բրուտ (Չէօմլէքճի) են եղեր սակայն յետոյ դանակագործութիւնը աւելի շահաւոր գտնելով, փարած են անոր, հետըզհետէ նրբացնելով և կատարելագործելով այս արհեստը։

Այս պատճառով Պալակէսին կը կոչէին Փոքր Ասիոյ Շէֆիլտը։ Թուրքիոյ ոչ մէկ կողմը աւելի զարգացած էր այս գործը։ Գիւղին մէջ 85 դանակագործներ կային, որոնցմէ փոքրիկ մաս մը, մերձակայ և հեռաւոր քաղաքներու մէջ ի գործ կը դնէր իրենց արհեստը։

Գիւղին 65 խանութներուն մէջ օրական 1500ի մօտ դանակեղէն կը

շինուէր իր ամէն տեսակներով։ Իրենք անձամբ մեծաքանակ կը տանէին Թուրքիոյ բոլոր մեծ ու փոքր կեդրոնները (Մելքոն Աստուր, Բիւզանդիոն, թ. 3433)։

1908ին Ենովք Կէնճեան, Յարութիւն Ճերմակեան, Արմենակ Կէնճեան՝ կը տանէին Իզմիր, Այտըն, Գոնիա, Նիկտէ և Ատանա։

Ղարակէօզեան Նազար կը տանէր Սեբաստիա, Խարբերդ, Մալաթիա և Տիարպէքիր։ Գրիգոր Էրքիլէթլեան՝ Մարզուան, մինչեւ Սամսոն։ Խոըր Խոըրեան՝ Զորում եւ այլ (Բիւզանդիոն, թ. 3433)։

Պալակէսիի դանակներէն կէսէն աւելին Կեսարիոյ խանութպաններուն կը ծախուէր։ Ասոնց մէկ մասը կ'սպառէր Կեսարիոյ և շրջակայ գիւղերուն մէջ, իսկ միւսը կը ղրկուէր Մերսին, Պէյրութ, Երուսաղէմ։ Ամէն դանակագործ ունէր իր յատուկ մարքան: Պալակէսցիք այս արհեստով ապահոված էին իրենց համար նիւթական բարեկեցութիւն մը, և հետզհետէ զայն կատարելագործելով ապահովաբար աւելի լաւագոյն վիճակի մը պիտի տիրանային։

Առաջ ամէնքն ալ դանակ շինելու համար նահապետական միջոցներ ունէին։ Օրինակ ձեռքով կը դարձնէին յեսանաքարի անիւը (չարխը), յետոյ զայն ձիով դարձնել սկսան և արտադրութիւնը բազմապատկեցին։ Օրական 50էն 100 դանակ շինողներ կային։

Դանակէն զատ կը շինէին մկրատ (գորգի համար), կկոց, ձեռքի գայլիկոն, մանր սղոցներ, այգիի յոտոցիկ եւայլ։ Դանակի տեսակները իրենց մեծութեան, ձեւին, պողպատի տեսակին համեմատ կը զանազանուին անունով և գինով։

Փոքրիկ դանակներու կոթերը կը շինէին այծի, գոմէշի և այլ կոտոշներէն, որոնք կը ներածուէին ամէն կողմէ, տան, մսի դանակներուն կոթը, յոտոցինը՝ փայտէ իսկ աժան ապրանքներունը՝ վարնոց ոսկորէ։

Դանակագործներէն զատ կային տասնի չափ բրուտներ, որոնք կը շինէին խալի պտուկ, հողէ կաթսայ, թոնիր, թաղար, զանազան տեսակ մեծ ու փոքր ջրամաններ, առանց ջնարակի։

Մասնաւորապէս ջրամանները, որոնք այդ շրջանակին մէջ ամառը շատ կը փնտռուէին, ջուրը իրենց մէջ շատ զով ու մաքուր պահելնուն համար, իրենց ծակոտկէնութեան պատճառով, գիւղին անունով կը կոչուէին Պէյէկէսիի պտուկ:

Պալակէսցի հազիւ մէկ երկու հիւսն, մշակ ու կառապան կար։

Պալակէսիի մէջ կիները և աղջիկներն ալ կ'աշխատէին։ Կիները մասնաւորապէս մեծ բաժին ունէին այգիի և պարտէզի աշխատութեանց մէջ։ Անոնք գորգ կը գործէին, տնական աշխատութիւններ կը կատարէին և նոյնիսկ իրենց ամուսիններուն աշխատութեանց կ'օգնէին։

Դանակագործին և բրուտին աշխատանոցը տանը մէկ աչքն է և կամ կիցը խանութ մը։ Այնպէս որ գործակցութիւնը ապահովուած էր.

Ըստ Մելքոն Աստուրի (Բիւզանդիոն, թ. 3433) «Պէյէկէսեցիք 40 տարի առաջ(1), շրջակայ այգիները չմշակուած, խմբովին կամ առանձին կ'երթան եղեր Կեսարիա: Իրենց հողէ ամաններր ծախելէն վերջը, ճամբուն վրայ կը հանդիպին Նէրմիր, ու հոն իրենց ծոցի դրամին կէսը, կամ ամբողջը գինիի, օղիի մախելով, յօյիկ կու գան Պէյէկէսի, երկուշաբթի կրկին իրենց տուրքը դարձնելու համար: Տեսնելով որ գինիի եւ օղիի բաւական դրամ կ'սպառի, կը խորհին իրենց զօրաւոր հողին վրայ որթատունկեր մշակել, ու 40 տարիէ ասդին, այնքան մշակած են որ իրենց պիտոյքը գոհացնելէ զատ, շրջակայ գիւղօրէից խաղողն ալ կը հոգան: Այսպէս Պէյէկէսեցին աշխատաւոր եւ բարեկեցիկ, սակայն իր Բարեկենդանն ալ Բարեկենդան ընող...: Ուրախութեան օրերուն, հարսնիքին, Բարեկենդանին կ'ուտէ եւ կը խմէ...: Պէյէկէսեցին զուարթ է եւ ընկեր: Հարսնիքի ու աշխատութեան համար ծնած»:

ԱՐԵԱՆ ՏՈՒՐՔ.

Պալակէսի եւս հարուածուեցաւ Թրքական բարբարոսութենէ։ Իր երիտասարդները որ ձերբակալուած հեռացուեցան, Կէմէրէկի մօտ Մուտարաւընի մէջ նահատակուեցան։

Ցետոյ տեղահանուեցաւ ժողովուրդը, որ ինչպէս բոլոր յայս կոյս Արգէոսի գիւղերուն ժողովուրդը, մահացած է Մալաթիոյ մօտ Ֆըրընճուլարի մէջ։

Տեղահանութեան պահուն կը պաշտօնավարէր հոն Կարապետ քհ. Ալանեան (ծն. 1874ին Զախմախ Թօղագլեան) որ 1906ին ձեռնադրուած էր Ստեփան եպ. Սանտալճեանէ իր ծննդավայրին վրայ, ուրկէ փոխադրուած էր Պալակէսի։ Տեղահանութեան թոհուբոհին մէջ անհետացած՝ չի գիտցուիր ի՛նչ պայմաններու մէջ և ի՛նչպէս։ Իսկ գիւղը անկանգնելի կերպով հիմնայատակ կործանած է։

VII

# ԵՒՔԱՐԱ ԿԱՄ ԷՖՔԷՐԷ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔ.

«Ս. Դանիէլէն հազիւ կէս փարսախ դէպի հիւսիս կռնակը արեւելքին տուած բլուրի մը կողին վրայ կը փողփողի ընկուզիներու ուրիշ փունջ մը, շատ աւելի հոյակապ, մանաւանդ անհամեմատօրէն պատկառելի:

Ս. Կարապետի վանքն է ան:

Ակնապարար է իր տեսարանը՝ հեռուէն: Իր կամարակապ ճեմոցին, ամփիթատրոնաձեւ քաղերուն եւ մանաւանդ վերջերս շինուած վարժարանին տեսքը խայտանքով կը զեղուն սիրտը: Իսկ երբ անոր մօտն ես, կը նկատես իր դարաւոր ու բանձր պարիսպը, որուն վերեւը արծուի բոյներու պէս շարուած են ուխտաւորներու խուցերը, վանականներու եւ Առաջնորդ-վանահօր յատկացուած բնակարանները, արդէն հմայուած ես» (Եղիազարեանի ձեռագիր)։

Իմ առաջնորդիս ու այս վայրերու քաջածանօթ տեղագրիս քայլերը վանքին այս արտաքին նկարը գծելէ յետոյ կը սպրդին ներս անոր ցած, լայն և հաստ դռնէն, շրջագայելու համար այդ դարաւոր հաստատութեան մէջ ուր պիտի մտնեմ ես ուրիշ առթիւ մը, ուստի չեմ ուզեր ներս մտնել հիմա, այլ կ'ուզեմ անոր շուրջը թափառիլ, և շուրջ բոլորը դիտել։

Իմ ուղեցոյցս՝ Եղիազարեան դարձեալ կու գայ օգնութեան զիս առաջնորդելու համար։

(1) Այս տողերը 1908ին գրուած են. հիմա 70 տարի պէտք է հաշուել։

«Տեսարանը զոր կ'ընդգրկէ ան (վանքը) ... վեհ է բանաստեղծ հոգիներու համար: Վայելելու համար զայն իր ամբողջ հրապոյրով, պէտք է ելլել պարիսպին վրայ երկարած կամարակապ ճեմավայրը:

Առաջդ տարածուած է գրեթէ բոլորաձեւ դաշտագետին մը՝ փաթաթուած գեղեցիկ եղանակին հիանալի դալարով մը. տաք եղանակին վանքին ու մօտակայ գիւղերու ոսկեգոյն հունձքով, իսկ ձմեռը միապաղաղ ձիւնի սաւանով մը որ հազիւ կէտկիտուած կ'ըլլայ գայլերու եւ բորենիներու անկանոն հետքերով: Աստիէն, անդիէն հոսող կամ վիժող ջուրի խոխոջները, եւ անոնց միշտ պատասխանող թռչուններու երգերը, եւ ջուրին եւ թռչունին ձայներուն խառն արձագանգը կը բարձրանան վեր, կը հասնին քեզ ու կը փայփայեն լռութիւնդ, նաեւ հոգիդ: Ձախ կողմը, անկիւնը զոր կազմած են բլուրներու քովքովիութիւնը, այսինքն դէպի հարաւ, քառաժայռեր, աստիճանուած ճամբայով մը ուրկէ հաճոյախնդիր ուխտաւորներ կ'անցնին ու կը դառնան, կամ քանի մը կածաններով, որոնցմէ վանքին այծերը կ'երթեւեկեն, իրարու ուսին բարձրացած լարախաղացներու պատրանքը կու տան քեզ: Այդ քարաժայռերէն ոմանք տիտանեան գանկեր են կարծես, նախ իրենց ձեւով, յետոյ անոնց մէջ փորուած ծակերով, որոնք մթութեան մէջէն նայող չարագուշակ բիբերու մագնիսականութիւն ունին. այդ ծակերը քարայրներու մուտքեր են:

Դաշտագետնէն անդին, բլուրներու իրարու պլլուած քղանցքներուն մէջ կ'երեւի հինաւուրց կամուրջի մը կիսատ ուրուանկարը: Աստին. դէպի հարաւ-արեւմուտք, բլրակի մը ուսին վրայէն կը նայի լեռնակ մը, որուն կողերն ի վեր կը մագլցին գեղեցիկ գիւղի մը տուները. արդէն այցելած ենք զայն. Պալակսին է ան: Ճիշդ հակադիր ուղղութեամբ, բայց շատ աւելի մօտը, վանքին բլուրին հիւսիսային անկիւնէն քանի մը տուներ կը նային լրտեսներու կէս նայուածքով՝ կարծես Էքքէրէ գիւղին յառաջապահ տուներն են: Իսկ գրեթէ դիմացդ, դաշտագետնին զուրգուրոտ գրկացը մէջ, պառկած է՝ լքուած հիւանդի մը սրտաշարժ իր երեւոյթով՝ Ս. Դանիէլի վանքը:

Ու ասոնցմէ զատ աչքիդ առջեւ են վանքին առաջէն սկսելով մինչեւ դաշտագետինը աստիճանաւոր վայրէջքով խոնարհած *Խաս-Բախչան*, որու ծոցէն բարձրացած բարդիները գլուխ կու տան այն կամարներուն որոնց տակ կանգնած կը դիտես սրտատրոփ, կը տեսնես նաեւ վանքին մեծ թթենիները, միշտ ինքնամատոյց ուխտաւորներու հարստահարութեան, նաեւ աւազանը, անոր շուրջ կառուցուած քանի մը պատշգամները. վերջապէս վանքին բանջարանոցը եւ փարախներու շարանը:

Երբ կը դիտես այս բոլորը, հոգիդ կը գրաւուի նոր ներշնչումներով, տարբեր անոնցմէ որոնք յուղուած են ներսդ երբ ծնրադրեր էիր վանքին մրոտ բայց սրբաբոյր կամարներուն տակ: Մեղքերու վրայ չէ որ կը խորհիս, այլ հաճոյքի վրայ. աղօթք մը չէ որ կը բխի ներսէդ, այլ սիրերգ մը. մահուան գաղափարը չէ որ կը լլկէ հոգիդ, այլ կեանքի քաղցրութեան հմայքովը կ'ողողուի ան: Ու փոխանակ ինքզինքդ զգալու պատժող Աստուծոյ մը սարսափին տակ, որ կը փշաքաղէ ամբողջ էութիւնդ, կը զգաս հեշտութիւնը զուրգուրոտ փայփայանքի մը որ ակն անծանօթ գերագոյն բարութենէ մը կը հասնի քեզի...

«Ուղին որ Կեսարիայէն սկսելով, կը բերէ ուխտաւորները մինչեւ վանքին դուռը, ասկէց անդին ալ կը շարունակուի հինգ վայրկեան, այսինքն մինչեւ վանքի բլուրին հիւսիսային անկիւնը. անկէց անդին ուղի մը չէ ան, այլ փողոց մը. Էքքէրէ գիւղին առաջին փողոցն է ան: Երբ մտնես այդ առաջին փողոցը ու նայուածքդ վեր առնես, ակնապարար տեսարան մը կը նկատես՝ այդ տեղ ալ: Դէպի հարաւ, հետզհետէ բարձրացող ձորին մէջէն քաղցրակարկաջ առու մը կը



հոսի, երկու կողմերէն զայն պարսպող ծառաստանները զովացնելով: Այդ առուն(1) երկուքի բաժնած է Էքքէրէն, արեւմտեան եւ արեւելեան. առաջինը կռնակ տուած է վանքի բլուրին. իսկ երկրորդը՝ անոր հանդիպակաց բարձունքին: Իր քարաշէն ու հայկական գիւղի մը շնորհքը կրող տուները երկու կողմէն իրարու վրայ կը բարձրանան այնպէս մը որ յաճախ վարի թաղին տանիքները վերի անմիջական թաղերու բակերն են դարձած: Ձախ կողմի, այսինքն արեւելեան բլուրին վերին թաղերուն մէջտեղ կոկոզուած է գեղակերտ եկեղեցի մը ակնահաճոյ գմբէթով մը. Էքքէրէյի Հայոց պանծալի եկեղեցին է ան, անուն ու իսկապէս հոյակապ: Անոր քովիկն է բարձրացած գիւղին համեստուկ վարժարանը: Էքքէրէյի բլրային մասերը, կը կրկնենք, ունին երեւոյթ մը որ արդարեւ կը զուարթացնէ ոեւէ այցելուի սիրտը. այդ տեղերու բնակիչներն են գիւղին մօտ հինգ հարիւր տնուորէ բաղկացած հայութիւնը: Աստին՝ դէպի հիւսիս, ձորին քիչ մը լայնցած մէկ մասին մէջ թխմուած կ'երեւին տունի խլեակներ, հնութեան գորշ գոյնին մէջ խեղդուած, միօրինակ, ու վհատեցուցիչ. յիսուն ընտանիքներ համախմբող թուրք թաղամասն է ան» (*Եղիազարեանի ձեռագիր*)։

*Էֆքէրէի հիւսիս-արեւմտեան կողմը Կիւվէրճինլիք Ձորին մէջ իբր* 20 *խորանարդ մէթր պարունակութեամբ լիճ մը կը գտնուի որ Էֆքէրէի ոգին կը նկատուի, որովհետեւ սոյն գիւղին մէջ ամենեւին ջուրի աղբիւր մը չգտնուելով ամառուան տօթագին ժամերուն գիւղին պարտէզները եւ այգիները անոր ջրով կ'ոռոգուին, բայց լիճն ինքնաբուխ չլինելով ժողովրդեան կողմանէ յատկապէս կարգուած պահապաններն գիշերն մինչեւ առաւօտ կը լեցնէին զայն* Տարսիախ Սույու *անուանեալ փոքրիկ առուակէն, որ կը բղխի* Տարսիախ *գիւղի մէջէն, եւ երկուքի բաժնուելով մի փոքրիկ մասը կը հոսի յիշեալ ձորին արեւմտեան կուշտին վրայ փորուած գետնափոր անցքերու մէջէն, որ Ս. Կարապետի վանուց պիտոյից սահմանուած է հնուց ի վեր, իսկ միւս մասը կ'իջնայ ձորն ի վայր եւ կ'անցնի ձորին մէջտեղէն, միեւնոյն ժամանակ իր ընթացքին վրայ կանգնուած երկու փոքրիկ ջրաղացքներն եւս դարձնելով, սակայն ջուրն յիշեալ լճին հասած երկուքի կը բաժնուի, մի մասն կը հոսի Էֆքէրէի վերի թաղն, եւ միւսը կ'իջնայ լճին մէջ, ուսկից եւս Էֆքէրէի վարի թաղն։*

*Սոյն լճին եւ Էֆքէրէի միջեւ կը գտնուի ժայռերով շրջապատեալ վայր մը, որ կը յորջորջուի* Պար Կայեր: *ժամանակաւ գիւղին ժողովուրդը, Զատկի եւ նման օրեր հոն երթալով պար կը բռնեն եղեր, ուսկից մնացած էր իր անունը...։*

*Էֆքէրէցիք* Տարսիախ Սույուէն *զատ ջուր չունենալով, իրենց ամէն պիտոյքները անով լրացնելու ստիպուած են, հետեւաբար ամէն առաւօտ արշալոյսին, ջուրին ջինջ եղած ժամանակը, գիւղին կիներն ու աղջիկները սափորները իրենց ուսերուն վրայ կը դիմեն գիւղին եզերքը, որպէսզի իրենց պէտք եղած քանակութեամբ ջուր տանին տուներնին։*

*Երբեմն տուներու մէջ ջրամբարներ կան փորուած զորս կը լեցնեն միեւնոյն ջրով, նմանօրինակ աշխատութենէ ազատուելու համար։* (*Տես* Արեւելեան Մամուլ, 1897, *էջ* 281-283)։

---

(1) Տարսիախ Սույու *կոչուած*։

ԱՆՑԵԱԼ.

Հնաբոյր վայր մըն է Էֆքէրէի վայրը, ինչպէս նոյնիսկ անունը ցոյց կու տայ։

Յ. Վ. Յակոբեան (տես Բիւրակն, 1899, էջ 601) կը կարծէ թէ Եւքարիա, յունարէն բառէն է որ առնուած է այս գիւղին անունը և կը նշանակէ սրբարան, սրբութիւն, նշխար սրբոց, ինչ որ անհաւանական չէ քանի որ Յովհաննէս Մկրտչի թանկագին նշխարները, այնքան յարգուած քրիստոնեայ աշխարհին մէջ, իր մօտը կամ մէջը ամփոփուած էին։

Տեղացի վարժապետ մը՝ կէօզլիւքլի Կարապետ պատուելի Առաքէլեան(1) — որուն յիշատակութիւնը ըրի արդէն— քաչքչուք ստուգաբանութեամբ մը գիւղին Եւքառա կոչումը կը լուծէր այսպէս. Եւքառա=Հեւքառաւ, այսինքն երբ Լուսաւորիչ Յովհաննէս Մկրտչի մասունքները բարձած ջորիի վրայ, բլրէն դէպի վեր կ՚ելլէր Անահիտ Դիցուհիին մեհենատեղին՝ նշխարաբարձ ջորին դժուարանցանելի և սեպ զառիվերէն ելած ատեն կը հեւար սաստկապէս, ուստի կոչուեցաւ Հեւքառաւ=Եւքառա: Սակայն աւելի անշուշտ շատ հեռու էր ստուգաբանութիւն մը ըլլալէ։

Գիւղը ունէր զանազան անուններ։ Թուրքերը զայն կը կոչեն Եօվքէրէ, Էվքէրէ, Հէվքէրէ, կամ Էֆքէրէ, իսկ հայկական կոչումով Եւքառա կամ Եպկարա։

Շուրջը հնութեան հետքեր կը գտնուին։ Գիւղին հիւսիս-արեւմըտեան կողմը գտնուած Կիւվէրջինլիք ձորին մէջ, ուրկէ կ՚անցնի Նիրզէ գացող ճամբան, երկու եզերքին վրայ կը գտնուին բաւական թուով հինէն մնացած վիմափոր քարայրներ։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Կեսարիոյ շրջանին ինչպէս բոլոր գիւղերը, նաև Էֆքէրէ պզտիկ քաղաք մըն է, ո՛չ միայն իր բազմամարդութեամբ, այլ նաև համակ քարաշէն և բարեձեւ իր տուներով։

Միայն նկատելի է որ դարերու ընթացքին մեծ զարգացում մը չէ ունեցած։ Սիմէոն Լեհացի 1618ին Ս. Կարապետի «յառաջ մեծ գիւղն ԵՒԳԱՌԱ» կը յիշէ «իրեք հարիւր տուն հայ» (ՀԱ. 1935, էջ 93) թիւ որ գրեթէ 300 տարիներու ընթացքին հազիւ 100 տունի յաւելում ունեցած է վասնզի ըստ Բնաշխարհիկ Բառարանին 500 տուն էր (համաձայն Եղիազարեանի), 450ը՝ Հայ և 50ը Թուրք ըլլալու պայմանով։

---

(1) Այս վարժապետը ԺԹ. դարու առաջին կէսին Փոքր Ասիոյ ամէնէն երեւելի վարժապետներէն մէկն էր, և կարեւոր պաշտօններ վարած է երբեմն իբր քարտուղար Կիլիկիոյ Կաթողիկոսին քով, և երբեմն իբր վարժապետ Կիլիկիոյ մէջ և ուրիշ տեղեր։ Մեծ համբաւ ունէր, ինքը իր ժամանակին տարազով, բարձրահասակ, վայելուչ, պատկառելի, լուրջ մէկն էր, աչքերը խոշոր, ակնոց կը դնէր, և անոր համար կէօզլիւքլիւ կ՚ըսէին։ Գիտէր հայերէն, թրքերէն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն, Ս. Կարապետի վանքին մէջ ուսած և ինքնօգնութեամբ զարգացած։ Նախապետ Ռուսինեանի հետ, մասնաւոր դասեր առած է անոր հօրմէն Պաղվանդէն իր մանկութեան։ (Յար. Նշանեան, Մասիս, 1898 Ապրիլ 6 թ. 45)։



Վտարանդին (Մասիս, թ. 3848) կը յիշէ միայն տեղւոյն 420 տուն Հայերը։

Տրդատ եպ. Պալեան 1891ին հոն կը հաշուէ 850 տուն, որոնց 200ը Թուրք (Ցուցակ Ձեռագրաց, էջ 55) ինչ որ սխալ կը թուի, վասնզի 1889ին Ղեւոնդ քհ. Տ. Ստեփանեան (Փունջ, թ. 2170) նոյն գիւղին մէջ հազիւ 250 տուն Հայ գտնուիլը կը հաւաստէ և 1898ին ուրիշ թղթակից մը (Բիւզանդիոն, թ. 141) 300 տուն Հայ և 30 տուն Թուրք բնակիչ ցոյց կու տայ և նոյն թուականին Յարութիւն Նշանեան (Մասիս, թ. 45) 450 տուն խառն բնակչութիւն, բայց բնաւ երբեք 850 տուն խառն և 650 տուն Հայ բնակչութիւն, սխալ մը որ Տրդատ եպ. Պալեան ինքն ալ սրբագրած է 1914ին (Հայ Վանօրայք, էջ 11) այս գիւղին բնակչութիւնը նշանակելով 500 տուն Հայ և 50 տուն Թուրք։

Թէոդիկ կը հաստատէ թէ տարագրութեան պահուն 405 տուն Հայ կար հոն միասին հաշուելով Կասիի Հայերը որ ըստ իրեն քանի մը տասնեակ էին։

ԹԱՂԵՐ.

Գիւղը՝ մացառի մը հովանուտ շուքին տակ երեսը ծածկող, գեղանի մանուշակի մը նման, կարծես թէ կը փնտռէր Ս. Կարապետի հռչակաւոր վանուց հովանին, միեւնոյն բլրակին հակառակ կողմը տարածուելով։

Գիւղը երկու բլրակներու կուշտերուն վրայ կը բարձրանայ ամփիթատրոնի ձեւով տուներ պարզելով. որոնց մութ շարքին մէջ գեղեցկակերտ տուներ իրենց խրոխտ ճակատը կը ցուցադրեն վեհօրէն քաղաքի մը վայել պերճութեամբ։

Գիւղին ճիշդ մէջտեղէն կ՚անցնի պզտիկ առուակ մը ու իր առջև կը տարածուի ընդարձակ մրգաստան պարտէզներ այլեւայլ պտղատու ծառերով, որոնք իրաւամբ, մանաւանդ գարնան եղանակին, ճըշմարիտ դրախտի մը զգլխիչ հմայքը կը թողուն դիտողին վրայ ըստ Գր. Էօրէճեանի (Մանզումէ, թ. 1160, 20 Ապրիլ 1905)։

Էֆքէրէ կը բաղկանար երեք թաղերէ, մին արեւելեան՝ որ կ՚անուանուի Տէմիրճիլիք, երկրորդը՝ արեւմտեան՝ Կիւզալէ, իսկ երրորդն՝ Օրթա մահէլէ։ Գիւղին մէջ կան բաւական ճաշակաւոր շինուած տուներ և շէնքեր, բայց ամենուն կանոնաւոր փողոց վասնզի թէ՛ զառիվեր և զառիվայր և թէ՛ նեղ ու աղտոտ են։ Ունէր 20-30 խանութէ բաղկացեալ շուկայ մը, ուր ըստ բաւականի թէ գեղացւոց և թէ շրջակայից հետ առեւտուր կ՚ըլլար։ Պէտք եղած ապրանքները միշտ Կեսարիայէն կը բերուէին։

Թուրքերը կը բնակէին գիւղին հիւսիսային և հարաւային ծայրերը (Արեւելեան Մամուլ, 1897, էջ 281-283)։

ՀԱՅԵՐՈՒ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ.

Հայերու հոն ե՞րբ հաստատուած ըլլալը որոշ չէ։ Ս. Կարապետի վանքին սերձաւորութիւնը թելադրական է և մտածել կու տայ թէ այս գիւղն ալ պէտք է շատ հին ըլլայ։ Ձեռագրաց յիշատակարաններու մէջ յաճախ կը յիշուի։

Հնագոյն յիշատակարանը որ մեզի հասած է այն արձանագրութիւնն է որ 1417 թուականով Երուսաղէմի Ս. Յարութեան տաճարին

վրայ կ'երեւայ Թորոս եպիսկոպոսի մը անունով, որ ինքզինքին կու տայ եպիսկոպոս «Հնկուռու եւ Կեսարիոյ» տիտղոսը։

Այս արձանագրութիւնը կը հաստատէ թէ արդէն ԺԵ. դարուն անիկա հայաշատ վայր մըն էր։

Իսկ ձեռագրաց մէջ իր առաջին յիշատակութեան կը պատահինք 1560ին (Ձեռագիր՝ Արիստոտէլի ստորագրութիւն)։

Չափազանց նշանակելի է որ «ի Կեսարիա ի գիւղն Եւֆառայ ընդ հովանեաւ Ս. Կարապետի Մեծի Ամլորդոյ հռչակաւոր սուրբ վանացն» գրուած յիշատակարանը փաստ մը չի հայթայթեր գիւղին հայաբնակութեանը։ 1681ին Սիմէոն Դպիր Լեհացի կը յիշէ թէ գիւղը ո՛չ միայն 300 տուն Հայ բնակիչ ունի, այլ նաև երեք եկեղեցի: Միայն Սիմէոն Դպիր չի տար անունները այդ երեք եկեղեցիներուն որոնք կը գտնենք հազիւ 1683ին գրուած ձեռագիր Յայսմաւուրքի մը մէջ յիշուած իրենց անուններով, վասնզի կ'ըսէ թէ ձեռագիրը գրուած է. «ի գիւղաքաղաքս որ կը կոչի **յԻւֆառայ** ի դուռն սրբոցն **Ստեփաննոսի Նախավկային** եւ սրբոյն **Սարգսի** եւ սրբոյն **Գէորգայ զօրավարացն...»**:

Ասոնցմէ Ս. Ստեփաննոս ցարդ կ'ապրի։ Նշանակելի է որ գրիչը քահանայ մըն է (Յովսէփ Երէց) որով չի կրնար վանական մը ըլլալ, ինչ որ կը նշանակէ թէ գիւղին մէջ կը պաշտօնավարէր։

Ս. Ստեփաննոս եկեղեցին յիշուած է նաև 1691ին գրուած Աւետարանի մը մէջ, որ նոյնպէս Սրապիոն անուն ամուսնացեալ քահանայի մը աշխատութիւնն է։

1693էն 1718 կը ծաղկի հոն (Հեւքառայ) Յարութիւն անուն գրիչ մը (յետոյ քահանայ) որ բազմաթիւ ձեռագիրներ գրած է։

Նոյնպէս հոն ապրած են ԺԸ. դարուն առաջին կիսուն Պօղոս, Աստուածատուր, Յովակիմ, Յովհաննէս Դպիր, Տ. Յակոբ քհ. և Տ. Յովհաննէս քհ. և այլ անուններով գրիչներ որոնք զանազան ձեռագիրներ գրած են մինչև 1760ական թուականներուն։

Այդ թուականէն յետոյ միշտ կը տեսնենք շարժումը կենդանի և կը գրուին դարձեալ ձեռագիրներ, որոնք թուել աւելորդ կը դատեմ։

Բայց յետոյ կ'երեւայ թէ գիւղը ունեցած է անկման շրջան մը վասնզի Երեմիա Դպիր Օշականցի, Սիմէոն Երեւանցի կաթողիկոսին գրագիրը, իր 1765 Յունիս 18ին կազմած նուիրակութեանց ցուցակին մէջ իբր Կեսարիոյ թեմ չի յիշեր նոյնիսկ այս գիւղը, որ Սիմէոն կաթողիկոս յիշած է իր Ջամբռին մէջ։

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ ՈՒ ԱՂՕԹԱՐԱՆՆԵՐ.

Էֆքէրէի եկեղեցին՝ Ս. Ստեփանոս, ինչպէս տեսնուեցաւ վաղեմի հիմնարկութիւն մըն էր, որ 1683ին կը յիշատակուէր, ուրիշ երկու եկեղեցիներու (Ս. Սարգիս և Ս. Գէորգ) հետ։

Ս. Ստեփանոս, որ դարերու ընթացքին քանիցս նորոգուած և վերաշինուած պիտի ըլլայ, 1871ին իր վերջին վերաշինութենէն յետոյ խաչաձեւ, բարձրակամար, պայծառ և հոյակապ եկեղեցի մըն էր, գեղեցիկ զանգակատունով և գմբէթով։

Այս եկեղեցին վերջին տարիները միակ գործածուած եկեղեցին էր, իսկ միւս երկուքին հետքերը կը մնային հակառակ Տրդատ եպ. Պալեանի այն կարծիքին թէ անոնց տեղերն իսկ անծանօթ էին (Ցուցակ Ձեռագրաց, էջ 55)։



Ս. Գէորգի վիմափոր կամ փորածոյ մատուռը կը գտնուէր, Ս. Ստեփաննոս եկեղեցիին հիւսիս-արեւմտեան կողմը՝ վայրկեան մը հեռուն պզտիկ խցիկով, խորշերով, իբր պահարան կամ աւազան։ Հոն կային չորս փայտեայ խաչեր, երեք պատկերներ, և փոքր սեղան մը, ուր տարին անգամ մը Ս. Գէորգի տօնին պատարագ կը մատուցուէր, իսկ ամէն շաբաթ այրերը և կիները ուխտի կ'երթային։ Զայն յիշատակած է նաև 1718ին գրուած Յայսմաւուրք մը։

Գալով Ս. Սարգիսին, նոյնպէս վիմափոր մատուռ մըն էր, Ս. Ստեփաննոսի հարաւ-արեւելեան կողմը, փոքրիկ սեղանով, երկու պատկերով և չորս փայտէ խաչերով։ Կիները Առաջաւորաց (Ս. Սարգիսի) պահքին ժամանակ երեք օր ծոմ կը պահէին, Չորեքշաբթի երեկոյ կ'երթային մոմ վառել հոն և ապա ուղղակի եկեղեցի՝ հաղորդութիւն առնելու։ 1718ին այս եկեղեցին ալ յիշատակուած է։ 1683էն մինչեւ 1718 արդէն Էֆքէրէ ունէր ուրեմն երեք աղօթավայրեր իրարու մօտ։ Սակայն ինչպէս կ'երեւայ, ԺԸ. դարուն սկիզբը ունեցած է նաև ուրիշ աղօթավայրեր, վասնզի 1718ին «Ի քաղաքն Կեսարիոյ եւ ի գիւղն որ կոչի Եւգառայ» գրուած յայսմաւուրքի մը յիշատակարանին մէջ Ս. Ստեփաննոսէն, Ս. Սարգիսէն և Ս. Գէորգէն զատ կը յիշատակուին երկու ուրիշներ, Ս. Մեռկերիոս և Ս. Թէոդորոս անուն, որոնց տեղը անծանօթ էր վերջերը (1)։

Էֆքէրէցիները ասոնցմէ զատ ունէին ուխտավայր մը Ս. Եղիա անուն, որ կը գտնուի գիւղին հարաւ-արեւմուտքը՝ փոքր լեռնադաշտի մը ծայրը՝ հսկելով ամբողջ գիւղին վրայ։ Հաստատ քարերով շրջապատուած, անշուք և անշէն հիւղակի մը փուտ, պզտիկ, խորանարդաձև քարէ շինուած չորս մայր պատերը 2-3 կանգուն բարձրութեամբ, վրան բաց, կը տեսնուէին։ Մատրան լայնութիւնն է իբր 3՝ և երկայնութիւնը 5 կանգուն, փոքրիկ ալանուխ մը, ինչպէս կ'ըսէին։ Սրբավայրի և հնութեան դրոշմը կրող, արձանագրութիւն ևլն. չ'երեւիր հոն։ Միայն հիւղակին արեւելեան պատին վրայ կը գտնուէր Ս. Եղիայի անունով փոքրիկ սեղան մը։ Հնամենի սովորութիւն մըն էր Էֆքէրէցիներուն համար, ամէն տարի Ս. Եղիայի կիրակին այցելել հոն, պատարագ մատուցանել և մատաղ ընել, մասնակցութեամբ հարուստ և աղքատ բոլոր գիւղացիներուն։ Նոյն օրը շրջակայ գիւղերէն ալ երկսեռ բազմութիւն ներկայ կ'ըլլար։

Երաշտութիւն պատահած ատեն ալ հոն ուխտի կ'երթային և բացօդեայ պատարագ կ'ընէին (Բիւզանդիոն, թ. 3566)։

ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ.

Էֆքէրէի մէջ առաջին անգամ դպրոցի մը հիմնարկութիւնը կատարուած է 1820ական թուականներուն սկիզբները, նախաձեռնութեամբ Տոքթ. Նահապետ Ռուսինեանի հօրը Պավղանդի, որ զաւակն

---

(1) Միայն դիտել տանք թէ շրջանին մէջ Ս. Կարապետի վանքին առջեւ գտնուող Ֆրէնկ-Տէրէսի կոչուած ձորին վերը, սարահարթին վրայ Ս. Թորոս անուն մատուռ մը կար, բայց մէջը հող լեցուած և վանքին պարիսպէն ներս, գերեզմանոցին քով ուրիշ Ս. Թորոս անուն մատուռ մը՝ մինչեւ վերջերը կանգուն (Յարութիւն Նշանեան, Մասիս, 1898, թիւ 83)։

էր աննշան մարդու, և պատանի հասակին մէջ Կ. Պոլիս երթալով աշակերտած պատի վրայ նկարչութեան (Գալէմքարութեան) արուեստին։ Հետզհետէ այնչափ ճարտարութիւն կ'ստանայ, որ մինչև անգամ պալատական շէնքերու մէջ աշխատելու առիթ կ'ունենայ Սուլթան Մահմուտի օրով (1808–1839), բայց Պավղանդ իր արհեստին մէջ յաջողակ ըլլալով հանդերձ, գոհ չ'ըլլար անկէ և կեսարացիի բնածին ուշիմութեամբը հետամուտ կ'ըլլայ նաև վաճառականութեան, որուն համար կ'ուղեւորի Եւրոպական Թուրքիոյ գլխաւոր քաղաքները, յարաբերութիւններ կը հաստատէ ու կը ծանօթանայ առեւտրական մեծ տուներու հետ և բաւական ժամանակ անցնելէ յետոյ, կը դառնայ իր հայրենիքն Էֆքէրէ, հոն վաճառականութեամբ զբաղելու։

Պավղանդ թէև ո՛չ ուսեալ, բայց ջերմ ուսումնասէր, իր ծննդավայրը դառնալէն յետոյ իր առաջին գործը կ'ըլլայ՝ ջանալ գիւղին մէջ բանալու ազգային վարժարան մը, որուն առաջին ուսուցիչը կ'ըլլայ Ս. Կարապետի աշակերտներէն Հաճի Մաթոսի որդի Աստուածատուր Սարկաւագ որ յետոյ՝ Էֆքէրէի եկեղեցիին վրայ քահանայ կը ձեռնադրուի և խոր ծերութեան մէջ կը մեռնի։ Հոն այդ նորաբաց վարժարանին մէջ իր նախնական ծանօթութիւնները կ'ստանայ ապագայ Տոք. Ն. Ռուսինեանը, մինչև իր Կ. Պոլիս գալը (1828–1829) (տես Տոք. Վ. Թորգոմեան, ՀԱ. 1902, էջ 41, նաև Մասիս, 1892 թ. 3868 և 1898 թիւ 45), հետեւանք պառակտումի մը որ առաջ կու գայ գիւղին աղաներու (Հաճի աղա, Զօրպաճի) կողմէ յարուցուած խոչընդոտներէն։

Անոնք չեն խղճահարիր Պավղանդի մասին չարախօսելու, և կ'ստիպեն զայն մեկուսանալու հանրային գործերէ և ի վերջոյ մեկնելու իր ծննդավայրէն ընտանեօք, սակայն իր հիմնած վարժարանը զանազան ելեւէջներով կը պահէ իր գոյութիւնը։

1872–1873ին անիկա կը կոչուէր Հայկեան։ Հոն կը յաճախէին 1872–73ին միայն 120 մանչ աշակերտներ տարեկան ընդամէնը 1500 դրշ. ծախքով որ եկեղեցին կը հայթայթէր (Համառ. Ազգ. Կեդր. Վարչ. 1872–73 Գաւառ. Վիճակ. էջ 61)։

Ցետոյ կառուցուեցաւ դպրոցի շէնքը եկեղեցիին կից, նոյնքան սիրուն և ներկայանալի։

Վարժարանը կը կոչուէր Թորգոմեան-Ագապեան և ունէր 1901ին 170 աշակերտ (130 մանչ և 40 աղջիկ) 3 ուսուցիչներով և 250 դրշ. ամսական ծախքով, որուն կէսը կը գոյանար թոշակներէ և կէսը կը վճարէր Եկեղեցւոյ սնտուկը։

1886ին Վտարանդին շատ տխուր գոյներով նկարագրած է Էֆքէրէի Հայոց ազգային, մանաւանդ կրթական կեանքը։

Անիկա կ'ըսէ թէ «դպրոց անունը կրող ... շէնքին մէջ երկու իրարու հակառակ կուսակցութեանց դպրոցներն կան, երկուքն ալ եթէ շաղուին հատ մը չեն կարող շինել: Անոնցմէ մէկուն մէջ 15 աշակերտք կան. տարեկան ծախք տասն ոսկի: Միւսին մէջ 70 աշակերտք կան եւ երկու վարժապետ. տարեկան ծախք քսան ոսկի: Այս երկուքէն զատ կայ մասնաւոր վարժարան մը, ուր կան 20 աշակերտք. տարեկան ծախք տասնեւութը ոսկի. թիւ պաշտօնէից մէկ:

«Եւքարա այժմ հինգ «մեծազօր» կուսակցութեանց բաժնուած է: Անոնցմէ մէկը դպրոցները բարեկարգել կ'ուզէ միացնելով, միւսը՝ բարձր թոշակ տալով աշակերտներ կրթել տեղ մը, եւ ապա վարժապետ ընել կ'ուզէ. միւս մը ո՛չ ան կ'ուզէ ո՛չ ան: Չորրորդն իրենց գիւղին մեծ աղաներն պատճառ կը բռնէ,



ժողովուրդը կը հարստահարեն կ'ըսէ. հինգերորդը մեծ աղաներն են որ թէ՛ դպրոց բացման եւ թէ՛ հաւաքման մասին իրենց հակառակորդները կը ճզմեն. այսպէս կ'ընեն, այնպէս կ'ընեն ի մի բան, առանց սակայն ճշմարտութեան հետեւելու: Ասի կը հետեւի դպրոցները զատելու խնդիրն եւ այս եւս կը կատարուի առանց յապաղելու:

«Վարժապետներուն ունեցած խեղճ վիճակը չենք ուզեր նկարագրել, որք թէեւ իրենց պաշտօնին գլխովին անյարմար, սակայն արգահատելի են: Եթէ այս կուսակցութիւնք միայն գիւղին մէջ խօսելով բաւականանային, բան մը ըսել չէր, բայց երբ Կեսարիա Արդարութեան պալատն երթաս, միշտ լեցուն պիտի տեսնես Եւքարացի դատախազներով եւ ամբաստանեալներով, որք խօսելը հերիք չսեպելով իրենք զիրենք ատեանէ ատեան կը քաշկռտեն: Ամօթ . . . եւ հազար ամօթ...:

«Աղջկանց դպրոց մը շինել տուած են, բայց դեռ ո՛չ աշակերտք կայ եւ ո՛չ վարժապետ: Եւքարացիք ինչպէս տղայոց նոյնպէս եւ աղջկանց դաստիարակութեան յոյժ անտարբեր են եւ յանձանք կը համարեն վերջիններուն կրթութիւնն. անոր համար շատերը կ'ընդդիմանան հիմա» (տես ՄԱՍԻՍ, 1886, Նոյ. 15, թ. 3848)։

Աղջիկներու դաստիարակութեան դէմ տիրող այս տխուր մտայնութիւնը կ'երեւայ թէ իսկապէս չափազանց խորունկ էր, վասնզի մօտաւորապէս 20 տարիներ յետոյ այդ թուականէն (1886) ուրիշ անձ մը՝ Դր. Խօրէնեան կ'ըսէ թէ «աղջկանց վարժարանը խիստ արգահատելի վիճակի մը մէջ կը գտնուի: Կիսախարխուլ շէնք մը, մութ ու խոնաւ, հազիւ քանի մը նստարաններ շարուած են աղջկանց առջեւ գրասեղանի տեղ: Ոչ կարգ կայ եւ ոչ ալ կանոն: 7–12 տարեկան աշակերտներ կը յաճախեն առ հասարակ . . . : Տղայոց դպրոցը, զէթ առաջնոյն հետ բաղդատելով աւելի կանոնաւոր եւ աւելի նպաստաւոր պայմաններու տակ կը գտնենք» (ՄԱՆԶՈՒՄԷ, 20 Ապրիլ, 1905, թ. 1160)։

ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՌԱԿՏՈՒՄ.

Էֆքէրէ որ նշանաւոր վայր մըն էր կռուազանութեան, ինչպէս կրթականին նաև կրօնականին մէջ զերծ չէ մնացած վէճերէ և կրօնապէս ալ պառակտուած է։

Հոս 1888էն սկսեալ մուտք գտած էր կաթոլիկութիւնը և ունէր իր առանձին եկեղեցին, մեծաշէն, կառուցուած ճարտարապետութեամբ Մանճըլընցի Ջէքի Ղալֆայի։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԴԻՐԸ.

Էֆքէրէ 3 ժամ հեռու է քաղաքէն և հազիւ 10 վայրկեան Ս. Կարապետի վանքէն, որմէ «լոկ դրամ շահած է... առանց սակայն օգտակար ըլլալու իր կաթնտու դրացի վանքին» (Բիւզանդիոն, թ. 141)։

Ինչպէս արդէն տեսնուեցաւ անընդհատ ու միշտ կռիւի բոյն վայր մը եղած է։ Իրենց միակ առաքինութիւնը հայախօս մնացած ըլլալն էր, սակայն ան ալ զարմանալի բարբառ մըն էր, աղաւաղեալ թրքախառն լեզու մը։

Հ. Ղուկաս Ինճիճեան «արուեստիւ հիւսն եւ բեւեռագործ» են ըսած է այս գիւղին բնակիչներուն համար ԺԹ. դարուն սկիզբը։ Հարիւր տարի յետոյ տեղւոյն հայերուն համար ըսուած է թէ մեծ մասամբ երկաթագործ են (Բնաշխարհիկ Բառարան)։

Վերջերն ալ մեծ մղում տրուած էր գորգագործութեան և կիները առ հասարակ անոր կը հետեւէին։

Էֆքէրէի բնակիչներուն մէկ փոքրիկ մասը վաճառական է ցորենի, անասուններու, մէկ քանին ալ սեղանաւոր (բօլիցանճի) Կեսարիա կամ Պոլիս։

Հայոց շատ փոքրիկ մասը կրնայ համարուիլ բարեկեցիկ, իսկ մնացեալները արհեստաւոր են, որոնք կը զբաղին երկաթագործութեամբ, հիւսնութեամբ, պարտիզպանութեամբ և այգեգործութեամբ և այլ արհեստներով։ Ոմանք կ'աշխատին գիւղին մէջ, ոմանք շրջակայից, և ոմանք ալ կ'աշխատին հեռաւոր տեղեր։ Կիներն կ'զբաղին մասնաւորապէս տանին գործերով և նաև ձմեռնային ամէն պաշար փայտ, վառելիք նոյնպէս անասնոց սննդեան վերաբերեալ բաներ, արտերէն, այգիներէն, ձորերէն և մօտակայ դաշտերէն ժամանակին ժողովուելով շալակնին բեռնաւորուած կը հաւաքեն տուներնին։

Արանց և կանանց հագուստներն շատ պարզ էին, առանց ոեւէ պաճուճապատանքի։ Կանայք մեծ մասամբ կը հագնէին էնթարի, շատ քիչ շրջազգեստ և մուշտակ։

ՀԱՑԱՋԻՆՋ ՓՈԹՈՐԻԿԸ ԵՒ ԷՖՔԷՐԷ.

1915ին անիծեալ տարին երբ եկաւ մահ և աւեր սփռելու Կեսարիոյ և իր շրջակայ հայաբնակ վայրերու վրայ, Էֆքէրէ եւս մատնըւեցաւ Թրքական դժոխային ճիրաններուն։

Նախ կը ձերբակալուէին և ճամբայ կը հանուէին երիտասարդները, բոլորն ալ կալանաւոր և նշաւակ դարձած՝ իրենց ընկերացող ոստիկան-զինուորներուն բրտութեանց։

Այս խումբին հետ էր նաև գիւղին քահանաներէն Տ. Մատթէոս Աքհ. Տօնիկեան(1) որ երբ խումբը Կեսարիա կը հասնի կը զատուի և ձեռքերուն գելոց, գրեթէ կիսամեռ, կը դարձուի Էֆքէրէ, ուր իր երկու աղջիկները բռնութեամբ իսլամացուցեր և ամուսնացուցեր էին։

Այս անգամ զինքն կը խառնեն 95 հոգինոց կարաւանի մը և դարձեալ ճամբայ կը հանեն։ Եւ անլուր անասնական հրճուանք մը ունենալու համար դահիճները Կէմէրէկի ճամբուն վրայ, ամայի տեղ մը, իր ամենասիրելի մէկ բարեկամին՝ Գարաքէհեայ Մկրտիչի ձեռքը կացին մը տալով յօշոտել կու տան Աստուծոյ պաշտօնեան, նախ թեւերէն, ապա սրունքներէն, ծառ ջարդելու պէս, վերջին հարուածն ալ գանկին — ոճիրին կերպը յղացող վայրենիներուն անգութ հրամանին համաձայն։

Ցետոյ կարգը կու գայ միւսներուն՝ որոնք փոխնիփոխ մէկզմէկ կը փողոտեն, կամքի ըմբոստութեան գերագոյն ճիգերէն յաղթահար, դիւային հաճոյքն առթելով հանդիսատեսներուն... (Թէոդիկ, Հայ

(1) Այս քահանան ծնած է 15 Օգոս. 1858ին։ Մկրտութեան անունն է Ստեփան։ Էֆքէրէի Թորգոմեան վարժարանի դասընթացքը լրացնելէ յետոյ ուսուցչութեամբ կը պարապի 20 տարի անդադար։ 1 Հոկտեմ. 1895ին Ատանայի մէջ քահանայ կը ձեռնադրուի Գրիգորիս եպ. Ցովհաննէսեանէ։ Եւքարա դարձէն մինչև ահաւոր Թուականը, 20 տարի արդիւնաւորապէս կը հովուէ իր ժողովուրդը, միշտ զարկ տալ ջանալով կրթութեան։ 1900էն ի վեր այրիացեալ էր։



Եկեղեցականութեան Գողգոթան, այս տեղեկութիւնները առած է տեղացի վերապրողէ մը)։

Ցաջորդ կարաւանները որոնք Եւքէրէէն մեկնած են չի գիտցուիր թէ ի՞նչ եղած են, կը կարծուի թէ մահու ճանապարհը գացած են, մերձակայ գիւղերու պէս Ալիգիյէ-Ալպիստան-Մալաթիա ուղեգիծով և ջարդուած ի Ֆուրունճուլար։

Նոյնպէս յայտնի չէ թէ նահատակութեա՞մբ թէ բնական մահով վախճանած են գիւղին միւս երկու քահանաները՝ Մեսրոպ քհ. Սահակեան(1) և Պօղոս քհ. Քէսիկպաշեան(2), որոնց ինչ ըլլալը յայտնի չէ։

ՋԻՆԱԴԱՐԷՆ ՑԵՏՈՑ.

Միայն 30ի չափ տնուորներ բախտ ունեցան դառնալու իրենց ծննդավայրը։

Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան, 1919ին իր Թեմական այցելութեան առթիւ հոն կը գտնէ Ս. Ստեփանոսի եկեղեցին միայն չորս պատ մնացած, զուրկ սեղանէ։ Իսկ բոլորովին քայքայուած էր նաև այնքան գեղեցիկ և մեծածախս վարժարանը։

Էֆքէրէ այս կերպով զուրկ եկեղեցիէ և վարժարանէ իր պէտքերը յետոյ կը հոգար Ս. Կարապետի վանքէն։

1924ին Էֆքէրէ կ'ապրէին 60 հայեր, որոնց թիւը 1926ին իջաւ 45ի։ Իսկ 1928ին 12 տուն կամ 50 հոգի էին, 9 այր, 17 կին չափահասներ և 10 մանչ և 14 աղջիկ փոքրիկներ (Ընդ. Օրացոյց Հիւանդ. 1929)։

Էֆքէրէի մէջ այժմ հազիւ 30 հոգի կը մնան, որոնք արհեստով և երկրագործութեամբ և այլոց քով ծառայութեամբ կ'զբաղին զուրկ եկեղեցիէ և դպրոցէ քանի որ Ս. Կարապետի վանքն ալ յափըշտակուած է։

# VIII

# ԿԷՍՍԻ ԿԱՄ ԿԱՍԻ

ՎԱՑՐ ԵՒ ԴԻՐՔ.

«Էֆքէրէի թուրք թաղէն անդին, ձորէն վար որ հետզհետէ կը խոնարհի ու կը յայննայ ու կրկնաւար բլուրներու միջեւ որ հետզհետէ կը ցածնան ու իրարմէ կը հեռանան, հոն կանանչներու մէջ անտես կը պառկի Կէսսի եւ Մանճըսըն յունախառն թուրք գիւղերը» (Եղիազարեանի ձեռագիր)։

Կեսարիայէն երեքուկէս և Եւքարայէն կէս ժամ հեռու Կասի գիւղը, երբեմն ունեցած է Հայ բնակչութիւն իր եկեղեցիով։

(1) Այս քահանան ծնած է 1863ին Էֆքէրէ։ 1896ին ձեռնադրուած է Ստեփան եպ. Սանտալճեանէ։

(2) Ծնած էր 1854ին, նոյնպէս Էֆքէրէ։ Մկրտութեան անունով Մարգար։ Ուսումը առած է նոյն գիւղին մէջ։ 1895ին ձեռնադրուած Սանտալճեան եպ.է Պէլվէրէնի Ս. Գէորգ եկեղեցիին վրայ։ Եօզղատի այս գիւղը Համիտեան դէպքերուն երբ աւարի տրուեցաւ, Տ. Պօղոս քհ. մազապուր փրկուած ապաստանեցաւ Մանճըսըն՝ ուր մնաց 8 տարի, յետոյ հրաւիրուեցաւ Եւքարա, ուր մնաց մինչև Աղէտի տարին։

ԱՆՑԵԱԼ.

Հին գիւղ մը ըլլալ կը թուի։

Կասի կը նշանակէ ըստ ոմանց բարձր, սակայն Քիր. Լէվիտիս զայն կ՚ստուգաբանէ յն. (νέα) Κασσιανὴ (Նոր) Կասիանի։

Ամէն պարագայի մէջ գիւղը նուազագոյն 4-5 դարու կեանք մը պէտք է ունեցած ըլլայ, եթէ շատ աւելի հին չէ։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Կասիի համար Հ. Ղ. Ինճիճեան ըսած է. «գիւղ շատաջուր ի ձորամիջի, յորում են տունք իբր 150, ուր է եւ եկեղեցի Հայոց» (Աշխարհ. Ա. 317)։

Այս տողերը ցոյց կու տան թէ արդէն ան փոքր գիւղ մըն էր ԺԹ. դարուն սկիզբը։

Հայ բնակչութեան մասին հին տեղեկութիւններ չկան, սակայն որոշ է թէ անիկա բաւական կարեւոր թուով հայութիւն մը ունեցած է երբեմն։

Այդ երբեմնի Հայ բնակիչներուն վերջին մնացորդներն էին 1886ին հոն ապրող երեք տուն Հայերը որոնք բոլորովին լքած են յետոյ այդ գիւղը։

Թէոդիկ 1915ի աղէտի տարին կը հաստատէ թէ հոն քանի մը տասնեակ տնուոր Հայեր կային որոնք Էճէէրէի ենթակայ էին։ Այս տեղեկութեան որքան ճիշդ ըլլալը չեմ գիտեր, սակայն հաւանական չեմ նկատեր։

ՀԱՅԵՐԸ 'Ի ԿԱՍԻ.

ԺԶ. դարէն սկսեալ Կասիի մէջ Հայ բնակչութեան մը գոյութիւնը գրաւոր վաւերագիրներ կը հաստատեն։

Այսպէս, 1597ին «ի յերկիրն Գայսարի, ի գիւղն որ կոչի Կասի» գրուած է Շարակնոց մը Յովհաննէս անուն գրիչէ մը, որ կ՚ըսէ թէ գիրքը գրած է «ընդ հովանեաւ սրբոյս որ զանուն չգիտեմ»։ Ուրեմն գրիչը կը հաստատէր թէ 1597ին ո՛չ միայն գիւղը ունէր Հայ բնակչութիւն այլ նաեւ Հայ եկեղեցի մը որուն անունը կ՚անգիտանար։

Այդ ձեռագիրը՝ այլապէս ալ հետաքրքրական է վասնզի կը լուսաբանէ Կասիի Հայոց գոնէ մասամբ բոշայական ծագումը, վասնզի ձեռագիրը «յիշատակ է Մահտեսի բոշայ Խոտանին (Կոստան?) եւ իր դեռաբողբոջ որդւոյն, Տումանին, Ալթունին, Կիրակոս սարկաւագին եւ մօրն Կուլվարդին եւ Խոտանին եղբարցն...»:

Շատ հաւանական է ենթադրել թէ Պարսկաստանէն տեղափոխուած Հայ-բոշաներ եկած հաստատուած են ԺԶ. դարուն սկիզբները կամ կէսերը այս յունական գիւղը, ինչպէս Կէրմիր։

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ.

Տեսնուեցաւ որ Հայերը Կասիի մէջ ԺԶ. դարուն կառուցած էին եկեղեցի մը որ 1597ին առաջին անգամ կը յիշուի անանուն։

Այդ եկեղեցիին անունը ապահովաբար Ս. Աստուածածին էր վասնզի այդ անունով կը գտնեմ յիշատակուած 1712ին։ Այդ թուականին Մասոնցի (= Մանճըսըն) Մահտէսի Սէֆէր Աւետարան մը կը նուիրէ «Կասի ի դուռն Ս. Աստուածածնայ»:

Այս եկեղեցին 1806ին տակաւին կը պահէր իր գոյութիւնը, ինչպէս Ինճիճեանի գրածէն կը հասկցուի։



Թէոդիկ՝ անշուշտ տեղեկութեան մը վրայ հիմնուած, կ՚ըսէ թէ 1915ին տակաւին կանգուն էր Ս. Աստուածածին եկեղեցիին շէնքը, որ սակայն չունէր իր քահանան եւ անհովիւ էր գիւղը (Հայ եկեղեց. Գողգոթան):

ՀԱՅՈՑ ՑՐՈՒՈՒՄԸ.

Կասիի Հայերը կը թուի թէ տեղափոխուած են Պալակէսի խմբովին կամ մաս մաս։

Սիմէոն Երեւանցի ԺԸ. դարուն կը յիշատակէ այս գիւղը իբր Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ հայաբնակ վայր (Ջամբռ), իսկ Ինճիճեան միայն Հայոց եկեղեցին կը յիշէ։

1886ին հոն ապրող երեք տուն Հայերը որոնք բոլորովին լքած են այս գիւղը, ցոյց կու տայ թէ Կասիի Հայ բնակիչները մաս մաս տեղափոխուած են այլուր.

Պ. Ս. Պօղոսեան (Արեւ, թ. 4828) կ՚ըսէ թէ Կասիի Հայերը միայն 30 տարի առաջ գաղթած են։

IX

# ՄԱՆՃԸՍԸՆ ԿԱՄ ՄԱՍՈՆ ԿԱՄ ՄԱՆՏԻՍՈՆ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԿԱՐԱԳԻՐ.

Կասիի մօտ, դալարազարդ գիւղ մըն է Մանճըսըն կամ Մանճուսուն։

Հ. Ղուկաս Ինճիճեան այս գիւղին համար կը գրէ. «գիւղ ի ձորամիջի, որոյ ջուր խառնի ի Գրգըռ Ըռմագ. բնակեալ ի Հայոց եւ ի Տաճկաց: Տունք սորա զարդարեալ պարտէզիւք եւ այգեստանեօք, յորս գտանին քարաճէն բրգունք աղաւնեաց իբր 100: Եկեղեցին նորա կոչի յանուն Սրբոյ Խաչի 4 խորանօք. իսկ ի գագաթան անդ լերին է եկեղեցի Սուրբ Աստուածածնի, զոր մնացեալ կարծեն ի ժինիվիզաց. ունին տաճիկք ճամի մեծ եւ 2 մէճիտ: Ասի ելանէ ճամբաւեալ ապուխտն Գայսէրիոյ» (Աշխարհ. Ա. 317):

ԱՆՑԵԱԼ.

Այս գիւղը որ կը յիշուի նաեւ Մասոն, Մանսոն, Մանտիսոն անուններով հաւանօրէն Բիւզանդական շրջանի բնակավայր մըն էր։ Այս կը հաստատէ հոն հրատարակել Ալլանեանի 1899ին գտած յունարէն արձանագրութիւնը (ՀԱ. 1899, էջ 16) որ կարելի չեղաւ թարգմանել։

Ահա անոր պատճէնը։

ΝΑΡΑΜΟΑϹ ΚΘΜΑΗϹ ΜΑΙΤΩ
ΝΑΤΙΜΝΗΜΗϹ ΕΝΕΚΑ ΝΑΜΗΖΩϹ
Ε ΑΥΤΗ ΚΑΙ ΤΩΑΙΣΡ ΑΝΕϹΤΗϹΕ.

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Այս գիւղին բնակչութեան մասին տրուած ընդհանուր տեղեկութիւն մը չունինք։

1886ին միայն գիտենք թէ հոն կ՚ապրէին 240 տուն Հայեր, որոնք

ունէին եկեղեցի, դպրոց և երկու քահանայ (Վտարանդին, Մասիս, 3848)։ Թէոդիկ հոն 1915ին կային կ'ըսէ 108 տուն Հայեր։

ՀԱՅԵՐ 'Ի ՄԱՆՃԸՍԸՆ.

Մանճըսընի կամ Մանճուսունի մէջ Հայոց բնակութիւնը ինչպէս կը տեսնուի շատ հին է։ Հայերը հոն հաստատուած են առաջ քան ԺԵ. դար և հասած են նոյն դարուն որոշ բարգաւաճումի և զարգացման ո՛չ միայն իրր կրօնական համայնք իրենց կազմակերպութեամբ, մէկէ աւելի եկեղեցիներով, այլ նաև մտաւորական շարժման մը նշմարանքներով։

Գիւղ մը որ ԺԵ. դարուն ունէր երեք եկեղեցի, արդէն պէտք էր ունեցած ըլլար առնուազն մէկ երկու դարու անցեալ և պատկառելի բնակչութիւն մը։

1495ին հոն գրուած ձեռագիրի մը գրիչը՝ Յովհաննէս Աբեղայ արգարև կը հաստատէ թէ Հայերը ունէին հոն Ս. Աստուածածին, Ս. Խաչ և Ս. Թորոս երեք եկեղեցիներ։

Նոյնպէս այդ ձեռագիրը կը հաստատէ թէ գիւղին երեք եկեղեցիները ունէին երեք քահանաներ, վասնզի յիշել կը յանձնարարէ «զՓանանոցն դրան Ս. եկեղեցեացս զՍիոն Երէցն, եւ զԱբրահամ Երէցն եւ զՍահակ Երէցն» որոնք գիտէք «ընդունեցան եւ մեծարեցին եւ պատուեցին»:

Եկեղեցիները ունէին նաև «սարկաւագունք»: Ասոնք ամէնը կը հաստատեն թէ բաւական ճոխ գիւղ մըն էր Մանտրսըն այն ատեն, որ իր բարգաւաճման չէր կրնար հասած ըլլալ մէկ օրէն միւսը, հետեւաբար 1495էն բաւական առաջ հոն պէտք էին հաստատուած ըլլալ Հայերը։

ՀԱՅ ԱՂՕԹԱՐԱՆՆԵՐ ԵՒ ԴՊՐՈՑՆԵՐ.

Մանճըսըն ինչպէս տեսնուեցաւ 1495ին արդէն ունէր երեք եկեղեցի, Ս. Խաչ, Ս. Աստուածածին, և Ս. Թորոս անուններով։ Ասոնցմէ առաջինը՝ Ս. Խաչ մինչեւ վերջը պահած էր իր գոյութիւնը անշուշտ զանազան նորոգութիւններով և վերաշինութիւններով։

Այս եկեղեցիին մէջ պաշտօնավարող վերջին քահանան եղաւ Տ. Յովհաննէս Սարըեան որ 1912ին կէսերը փոխադրուած էր Նիրզէ և Մանճըսըն մնացած էր առանց քահանայի։

Ս. Աստուածածին եկեղեցին, ինչպէս տեսնուեցաւ, 1806ին տակաւին գոյութիւն ունէր լերան գագաթին վրայ, և ինչպէս Ինճիճեան գրած է, կ'երեւայ լատինական շինութիւն մըն էր որ Հայք իւրացուցած էին։ Անյայտ է թէ ինչ պայմաններու մէջ անիկա անհետացած է։

Ս. Թորոս եկեղեցին 1495էն յետոյ 1574ին անգամ մը եւս կը յիշատակուի։ Կէրմիրցի պայ Խաթուն անոր կը նուիրէ Մաշտոց մը։ Անկէ յետոյ այլեւս անոր յիշատակութեան չենք հանդիպիր։

1872-1873ին այս անշքանալ սկսած գիւղին անանուն դպրոցը՝ 80ի չափ տղաք կ'ուսանէին, իսկ աղջիկներու վարժարան չի կար։

1886ին Արամեան կոչուած դպրոցը կը յաճախէին 40-45 աշակերտներ։ 1901ի վիճակագրութեան մէջ աշակերտներու թիւը նշանակուած է 60, և ծախքը ամսական 75 ղրշ։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔ.

Մանճըսըն Հայերէ դատարկացած, սակայն Հայ յիշատակներով լեցուն վայր մը եղած է։



Անիկա եղած է երբեմն պատկառելի Հայ բնակչութեան մը կեդրոնավայրը և բարգաւաճ Հայ գիւղ մը, ո՛չ միայն իր երեք եկեղեցիներով, այլ նաև հարստութեամբ, որուն փաստը կու տայ մեզի ցուցակ մը որ 1661էն յետոյ կազմուած է, ցոյց տալու համար Կեսարիոյ վիճակին պտղիին քանակը։ Այդ ցուցակին մէջ, այս գիւղը կը յիշուի «Մանճուն» անունով, և 5 ոսկի առաւելագոյն քանակով։

Ուրեմն այդ շրջանին ան կը նկատուէր Կեսարիոյ շրջանին ամէնէն բարգաւաճ և հարուստ գիւղը։

Գիւղին բարգաւաճման նպաստած ըլլալ կը թուի՛ն իր շուրջ գըտնըւած քարահանքերը որոնք մինչև վերջերը կը շահագործուէին և բոլոր շրջակայքը անկէ հանուած քարերէն կ'օգտուէին։

ԺԸ. դարուն Սիմէոն կաթողիկոս Երեւանցի (Ջամբռ) կը յիշատակէ Մանճըսընը իբր Կեսարիոյ ենթակայ վայր մը, ինչ որ ցոյց կու տայ թէ այդ թուականներուն դեռ բարգաւաճ վիճակ մը ունէր։

1740ին և 1741ին Մասոնցի Տիրացու Գրիգորի նոյն գիւղին մէջ կոլոտի դպրոցին համար Ղուկաս վրդ. Խարբերդցիի թարգմանած Բանք ոսկիականք եւ գեղեցկագոյնք և Նորագոյն Անտառ անուն երկու գործերուն ընդօրինակութիւնը կատարած ըլլալը նշանակելի է և ցոյց կու տայ ժամանակին կրթական շարժման իրենց հետեւողութիւնը։

Սակայն կրած են յետոյ իրենց թուրք դրացիներու ազդեցութիւնը և բռնակալութեանց ենթարկուած։

Ասոր ամէնէն գլխաւոր ապացոյցը սա է որ հակառակ անոր որ բոլորտիքի գիւղօրէքը բոլորն ալ հայախօս էին իրենք թրքախօս դարձած էին։

Իրենց ապրուստը տեղւոյն վրայ ճարելու դժուարութեան համար արդէն վաղուց պանդխտութեան վարժ այս գիւղացիները, նեղուելով իրենց դրացիներէն հաւանօրէն ցրուիլ սկսած են և հետզհետէ պակսած։

ՎԵՐՋԻՆ ՀԱՐՈՒԱԾ.

Վերջին հարուածը եղաւ 1915ի աղէտը։

Վերջին խլեակները գիւղին, 32 հոգի հեռացուեցան իրենց գիւղէն և սպանուեցան Կէմէրէկի Մուտարասըն գիւղը։

ՋԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՅԵՏՈՅ.

Մանճըսըն դարձան միայն 5 տուն (39 անձ, 7 այր, 12 կին, 15 մանչ և 5 աղջիկ) Հայ բեկորներ, ո՛չ Մանճըսընցի որոնք զուրկ ամէն բանէ, կ'ապրին հոն երկրագործութեամբ և քարահանութեամբ։

# X

# ՄՈՒՆՃՈՒՍՈՒՆ ԿԱՄ ՊԷՆՏՈՒՍԱ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱԳԱՏ.

Մանճըսընէ մէկ ժամ և Եւքարայէ կէս ժամ բացը և նահանգին կեդրոնէն՝ Կեսարիայէն չորս ժամ հեռաւորութեան վրայ կը գտնուի Մունճուսուն գիւղը։

*Կասիի և Մանճըսընի* «առաջը — դէպի հիւսիս տարածուած է ընդարձակ եւ ծանծաղուտ դաշտագետին մը, *Աճը-չայ* գետակին կապարագոյն եւ Սեբաստիոյ խճուղիին գորշագոյն գիծը գծելէ երկու հաւասար մասերու բաժնած են զայն: Այդ դաշտագետնէն անդին, հիւսիսային հորիզոնին առաջը բարձրացած բլրաշարքի մը գոգացած կողին վրայ կը փայլի երեք հարիւր տնուորէ բաղկացած հայկական գեղաշուք գիւղ մը, Մունճուսունն է ան:

Սիրուն դիրք մ'ունի ան. սիրուն է մանաւանդ իր տեսքն ալ: Երկու բլուրներու կազմած անկիւնին մէջ սեղմուած, թիկունքը ձմեռուան սաստկաշունչ հովերէն պահպանելու համար հիւսիսի բլուրներուն տուած, իսկ երեսը՝ ամառը



ՄՈՒՆՃՈՒՍՈՒՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏԿԵՐԸ 1918ԻՆ,
(Վարի թաղին մէջ եկեղեցին փլցուած եւ քանդուած)

Արգեղոսին քաղցր շունչովը զովացնելու համար անոր դարձուցած, կը ցամքէ անդորր հանդարտութիւնն իր համեստ բնակիչներուն: Փողոցները տարապայմանօրէն նեղ ու ծմակոտ են, բայց իր տուները, քարաշէն ու կոկիկ, անտեսել կուտան քեզ փողոցներուն տգեղութիւնները:

Փոքրիկ եկեղեցի մ'ունի. անոր քովիկն ալ թխմուած է պզտիկ դպրոց մը...»:

*Այս տողերուն հեղինակը՝ Եղիազարեան որ մեզի առաջնորդեց Կեսարիայէն մինչեւ Մանճըսըն, հոս կ'ընդհատէ իր տեղագրական գեղեցիկ պատկերացումները, որոնցմէ այնքան օգտուեցայ — ինչպէս տեսնուեցաւ:*

*Մահը՝ անգութ, չի թողուր Կեսարիոյ այս տեղագրողին գոնէ աւարտել իր թարթափումները:*

*Այլեւս ինծի անծանօթ և ինծի համար անկոխ ճամբաներու վրայ ստիպուած եմ թափառիլ իբր տեսակ մը կոյր, գրեթէ խարխափելով և բնաւ չկարենալով տալ այն կենդանի պատկերը որ իմ մենտոր տեղագիրս կու տար* (1):

(1) *Դարձեալ պիտի օգտուիմ իրմէ ուրիշ շրջանակի մը համար՝ որ ինքն Անդր-Արգեղոսեան անունով մկրտած է:*



**ԱՆՑԵԱԼ.**

*Այս գիւղը կը թուի հայկական ծագում ունենալ, և հազիւ քանի մը հարիւր տարիներու հնութիւն:*

*Միայն իր երկու անուն ունենալը, և մէկուն ալ Թրքական Նկարագիրը կասկած կու տայ թէ անիկա հին չէնի մը վայրն է, որ յետոյ հայերէն վերաբնակուած է:*

*Հին յիշատակարաններու և տեղացի և շրջակայ ծերունիներու մէջ կը յիշուի այս գիւղը* Պենտուսա *անունով:*

*Աւանդաբար այս բառը ծերունիք կ'ստուգաբանէին* «պենտ ուսա» *վանքի իբր թէ երբ նախկին Հայ գաղթականները կու գան հոն հաստատուիլ, գաղութին առաջնորդները կը տեսնեն որ գիւղը ջուրով ողողուած է, ուստի կ'աշխատին ջուրը ցամքեցնել, և փնտռելով կը գտնեն որ Սարմըսագլը կոչուած վտակին թումբերը քակուած լինելով, ջուրը դաշտը ողողած էր: Ուստի կը ջանան բուն տեղը գտնել և ջուրը առուն հեծցնել — ինչպէս կ'ըսեն —, ան ատեն կը պոռան,* «Պենտը ուսայ, սորվեցայ»: *Իրաւամբ Յ. Վ. Յակոբեան դիտել կու տայ թէ ասիկա էր «քաշքշուք մեկնութիւն մը» (տես* Բիւրակն, 1899, *էջ* 601)*: Եւ ինքն* Պենտուսա *բառին մեկնութեան համար կ'ըսէր թէ «մի գուցէ ժողովուրդը Պոնտոսէ գաղթած լինելուն համար տրուած» էր այս անունը: Յակոբեան, որ նոյն տեղացի է, կ'ըսէ թէ հնագոյն յիշատակարանք ՌԽ* (=1591) *թուականը չեն անցնիր, տապանաքարերու վրայ (նոյն): Սակայն իմ համոզումովս գիւղին հիմնարկութիւնը ԺԶ. դարուն ոչ թէ վերջերը այլ սկիզբները և թերեւս աւելի առաջ պէտք է ըլլայ:*

*Ասոր համար շատ զօրաւոր փաստ մը կ'ընծայէ* 1592*ին գրուած յիշատակարան մը (սկզբնագիրը* 1376*ին գրուած Աւետարանի մը մէջ) որուն մէջ կը յիշատակուի թէ Կեսարացի Սարգիս եպ. մը այդ ձեռագիրը կազմած է Կ. Պոլիս, Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցին:*

*Այդ տողերուն մէջ կը յանձնարարուի յիշել* «Պէնտուսու կտրիճ որայքն Ըստըմպօլու եղող» *վանքի* «ժողովեցին իւրեանց մէջ Ի. ղուռիշ, տվին զնեցին Աւետարան, Գ. ղուռիշ ալ կապելուն տվանք, դրին յիշատակ ի Պենտուսա յեկեղեցին, ի դուռն Ս. Աստուածածին, իւրեանց հոգոյն համար...»:

*Արդ, եթէ Յ. Վ. Յակոբեանի տեսութեան համաձայն Պէնտուսացիք* 1591*ի շուրջ հաստատուած ըլլային իրենց բնակավայրը, երբեք հաւանական չէր կրնար ըլլալ որ արդէն իսկ կառուցած ըլլային իրենց եկեղեցին, իսկ երբեք կարելի ալ չէր ըլլար որ այնքան մեծ թուով պանդուխտներ ունեցած ըլլային Կ. Պոլիս:*

*Հետեւաբար Մունճուսունի կամ Պէնտուսայի հիմնարկութեան թուականը աւելի առաջ պէտք է ըլլայ:*

*Այս տեսութեան ույժ տալ կը թուի գիւղին մէջ ապրող այն աւանդութիւնը թէ գիւղը նախապէս մօտակայ* Գարաղան *կոչուած վայրն էր, ուր մինչեւ վերջերը կը տեսնուէին եկեղեցիի մը աւերակները: Այդ գիւղը կը գտնուէր Գարաղան կանանչ ձորակին մէջ, և հեղեղ մը իբր թէ զայն հիմէն անհետացուցած էր, որով քիչ մը աւելի վար, այս անգամ բլուրի մը գագաթն ու կուշտը բնակութիւն հաստատած էին (Կ. Յ. Տէվէլեան,* Մանզումէի Էֆքեար, 1901 *Հոկտ.* 31, *Թ.* 154)*:*

*Այս աւանդութեան և* պենտ ուսայ *առասպելին մէջ ալ կարելի է առընչութիւն մը գտնել:*

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

1872–73ին կազմուած վիճակագրութիւն մը, առանց Հայոց թիւը նշանակելու 12 տուն Բողոքական և 90 տուն Թուրք բնակիչ կը նշանակէ, իսկ 1886՝ Վտարանդին 350 տուն Հայ և նոյնչափ ալ Թուրք և Հայ-Բողոքական ցոյց կու տայ գիւղին բնակչութիւնը։

1897ին Թղթակից մը 220 տուն Հայ և 100 տուն Թուրք բնակիչ ունի կ'ըսէ գիւղը (Բիւզանդիոն, թ. 253. Մասիս, թ. 90)։

1901ին Տէվէլեան (Մանզումէ, թ. 154) ամբողջ գիւղը 300է աւելի տուներէ և Հայոց տուները 200էն աւելի կը նշանակէ։

1906ին Մունճուսունի համար ըսուած է թէ 200 Հայ տնուոր ունէր և կազմուած վիճակագրութեան մը համաձայն տարիներէ ի վեր տարեկան 40–50 ծնունդ կ'ունենար 8–10 մահերու դէմ, ինչ որ կը նշանակէր թէ բնակչութեան թիւը հետզհետէ աճելու վրայ էր (Սուրհանդակ. թ. 2185)։

Եղիազարեան ինչպէս տեսնուեցաւ գիւղին բնակչութիւնը կը համարէ 300 տուն։

Թէոդիկ իր ձեռագիրին մէջ Հայոց տուներուն թիւը 1915ին կը նշանակէ 250 և անձերու՝ 1750, յարանուանական տեսակէտով սապէս բաժնուած. 1400 Հայ, 50 Հայ-Կաթոլիկ և 300 Հայ-Բողոքական։

ԹԱՂԵՐ.

Մունճուսուն կը բաժնուէր երկու թաղերու, Վարի և Վերի, սակայն երկու թաղերը չունէին առանձին աղօթարաններ և կրթարաններ, այլ միակ եկեղեցի մը շուրջը համախմբուած էին։

ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ

Ինչպէս կը տեսնուի կրօնական բաժանումներ ունէր այս գիւղը, ուր մուտք գործած էին Կաթոլիկութիւնը և Բողոքականութիւնը, մասնաւորապէս այս վերջնոյն Թէսլիմճիներ կոչուած բաժանումը։

ՀԱՅ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ.

Հայերը՝ վաղուց, նոյնիսկ ԺԶ. դարուն և թերևս աւելի առաջ ունէին, ինչպէս տեսնուեցաւ, Ս. Աստուածածին անուն եկեղեցի մը, (յիշուած 1592ին և 1721ին) որ անշուշտ մի քանի անգամներ նորոգուած ու վերաշինուած է։

Անիկա վերջին անգամ 1836ին վերակառուցուած էր Օտեան Պօղոս Աղայի(1) ձեռնտուութեամբ, որ 650 ոսկի տուած է այս առթիւ։

Ունէին նաև դպրոց մը, որ 1849–1850 թուականներուն Մունճուսունցի և Կ. Պոլիս հաստատուած Օտեան Պօղոս, Այվատեան Սըվաճըպաշը Յովհաննէս և Բէսիմճի Մկրտիչ աղաներու նիւթական աջակցութեամբ բացուած է։ Անոնք իրենց ծննդավայրը լուսաւորելու և զարգացնելու համար ուսուցիչ կարգած են Սկիւտարի ճեմարանին աշակերտ Մանճուսունցի Խաչատուր պատուելի Տէվէլեանը (յետոյ Տ. Յակոբ քհ.) որ մինչև 1856 պաշտօնավարած է իբր ուսուցիչ։ Իրեն կը յաջորդէ Յակոբ Քէթէճեան որ 30 տարի (1860ական թուականներէն մինչև 1890ական թուականները) անընդհատ աշխատած է գոհացուցիչ վիճակի մէջ պահել վարժարանը (Մանզումէ, թ. 154)։

Այս դպրոցը որ կը կոչուէր Մծբնեան 1872–73ին ունէր 60 մանչ և 40 աղջիկ աշակերտ, իսկ 1886ին 80 մանչ և 30 աղջիկ և ունէր 30 ոսկի տարեկան ծախք (Մասիս, 3848)։ 1895–96 Հայկական դէպքերէն յետոյ տիրող տագնապալի կացութեան բերմամբ Մունճուսունի կրթական գործը խանգարուած և գիւղն ալ դէպի անկում դիմած է։ Վարժարան գրեթէ չունի ըսած է թղթակից մը 1897ին (Բիւզանդիոն, թ. 253)։

1901ին Մծբնեան վարժարանը ունէր միայն 47 մանչ աշակերտներ և աղջիկներու վարժարանը փակուած էր։ Իսկ երկու ուսուցիչներով այս վարժարանին համար ամսական 170 ղրշ. ծախք մը կ'ըլլար եկեղեցւոյ սնտուկէն հոգալով։

ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ.

Հայ կաթոլիկները եւս ունէին առանձին եկեղեցի մը և դպրոց մը, որոնք կը պահէին իրենց գոյութիւնը մինչեւ տեղահանութիւն։

1902ին հոն մտած էր կաթոլիկութիւնը, որուն յարած էին 30-40 ընտանիքներ։

Հոն կեսարիոյ Հայ կաթոլիկ առաջնորդարանը հաստատած էր առաքելութիւն մը։

ՀԱՅ-ԲՈՂՈՔԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Գիւղին Բողոքական փոքրաթիւ համարակութիւնն ալ ունէր իր ժողովարանը և դպրոցը, նոյնիսկ 1870ական թուականներէն սկսեալ։ 1886–1897 Բողոքականները կը հաշուէին 20 տուն (Մասիս, թ. 3848. Բիւզանդիոն, թ. 253) սակայն ինչպէս կ'երեւայ յետոյ կարճ ատենուան մէջ անոնց թիւը մեծցած է և 300 անձի հասած։ 1886ին իրենց դպրոցը ունէր 13 աշակերտ և 20 աշակերտուհի և վարժուհի մը (Մասիս, թ. 3848)։ Բողոքականութիւնը Մունճուսուն մտած է 1860ական թուականներուն, տեղացի հայու մը ձեռամբ որ նորակազմ հօտին առաջին հովիւը եղած է։

Այս անձն էր Վեր. Գրիգոր Հէքիմեան որ ծնած էր 1833ին և մինչև 25 տարեկան՝ քանի մը դպրոցներու մէջ ուսում ստանալէ ետք, պահ մը կը հետեւէր վաճառականութեան՝ զոր կը լքէր 1860ին և կ'սկսէր դաստիարակել գիւղին մանկտին։

Չորս տարի վերջ Մարզուան անցնելով՝ կ'աւարտէ անոր Աստուա-

---

(1) Եազըճի մականուանեալ Պօղոս Աղա Օտեան՝ հայրը մեծահռչակ հայրենասէր Գրիգոր Օտեանի, որդին է Բալուցի Պետրոսի որ Կ. Պոլսոյ մէջ Մունճուսունցի Առաքել կամ Ներսէս անուն հիւսնի մը կը միանայ և անոր հետ կու գայ Մունճուսուն և կ'ամուսնանայ անոր աղջկան Կիւլիսթանի հետ և կ'ունենայ երկու զաւակ, Պօղոս և Աննա։ Պօղոս պատանեկան հասակին Կ. Պոլիս կ'երթայ, արքունական շինութեանց մէջ կը մտնէ իբր քէֆնէճի, Տէրէվանքցի Գալեան Գրիգոր Խալիֆայի քով։ Պօղոս կը սորվի գրել, կարդալ, և համարակալութիւն, և քիչ ատենէն կը դառնայ արքունի շինութեանց առաջին ճարտարապետ (Եազըճի)։ Պօղոս աղա դպրոցին համար ալ տուած է 70 լիրա և եկեղեցիին շինութեան 650 ոսկի նպաստէ զատ ունի շատ մը յիշատակներ։ Վարժապետին ամսականը ինք վճարած է երկար ատեն և ամէն տարի յիսուն աշակերտի համար գլխարկ, կօշիկ և զգեստ՝ իսկ քահանաներուն համար 500 ղրուշ կը ղրկէր Կ. Պոլիսէն (Յար. Նշանեան, Մասիս, 1898 էջ 90)։

ծաքանական ճեմարանը 1868ին և երէց կը ձեռնադրուի ծննդավայրին նորակազմ Եկեղեցիին վրայ:

Այնուհետեւ Կէմէրէկ, Նիյտէ, կրկին Մունճուսուն յաջորդաբար կը շարունակէ Աւետարանական իր պաշտօնը մինչև 1900, երբ այլեւս խոր ծեր՝ կը քաշուի ասպարէզէն և կը մեռնի առանց տեսնելու իր հօտին խղճալի վիճակը:

## ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ.

Մունճուսուն հողագործական կեդրոն մըն էր, ուստի ժողովուրդը երկրագործ, և հարուստ չի կար (Բիւզանդիոն, Թ. 253):

Հայերէն հազիւ 8–10 ընտանիքներ կային որ մշակ էին: Մեծ մասը արհեստաւոր և խանութպան էր:

Գիւղացիք վաղուց իրենց բնակավայրին մթնոլորտը անցուկ գտնելով նոյնիսկ ԺԶ. դարէն սկսեալ պանդխտել սկսած էին դէպ ի Կ. Պոլիս և այլ հեռաւոր քաղաքներ:

Տնտեսական աննպաստ պայմաններ հարկադրեցին Մունճուսունցիքը պանդխտելէ աւելի գաղթել դէպի արտասահման: Իրենց նախասիրած վայրը եղած է կարծես Աղեքսանդրիան ուր դարուս սկիզբը կային 30ի չափ Մունճուսունցի ընտանիքներ:

Հայկական դէպքերէն յետոյ երբ երթեւեկները դժուարացան արհեստաւոր և գործաւոր Մունճուսունցիք կիրարկել սկսան շահարկութեան լաւ եղանակ մը: Փոխանակ գիւղէն դուրս տարիներով պանդխտելու 5-6 ամիս շրջակայ և Անատոլուի քաղաքները շահագործելով ձմեռը կը դառնային իրենց գիւղը (Մուրհանդակ, Թ. 1856):

Կեսարիոյ շրջանին, իմացականապէս ամէնէն ուշիմ և ամէնէն սրատես այս գիւղացիները, ժամանակին յառաջդիմական շարժման հետեւած և առհասարակ ուսումնասէր եղած են, և աշխատած՝ իրենց սպառնացող տնտեսական փճացումին դէմ մաքառիլ, կանուխէն հետամուտ ըլլալով չերամաբուծութեան, սակայն անծանօթ հիւանդութիւն մը պատճառ եղած է ամէն ջանք ու փափաք կասեցնելու: Սակայն 1905ին Պրուսայի չերամաբուծական վարժարանէն վկայեալ Ջէքի Արսլան թթենի մշակելով վերստին կը ջանայ չերամաբուծութիւնը ընդհանրացնել Մունճուսունի մէջ (Մուրհանդակ, Թ. 1902):

Մունճուսունի մէջ 1897ին գտնուած է հանքածուխի երակ մը (Բիւզանդիոն, Թ. 338) որ եթէ շահագործուէր մեծ բարիք մը կրնար ըլլալ գիւղին և շրջակայքին համար, սակայն աւելորդ է ըսել թէ այս տեսակէտով ոչ մէկ ձեռնարկ եղած է:

Մունճուսունցիք կը խօսէին հայերէն, իրենց խօսած հայերէնը լաւագոյնն էր շրջակայից մէջ (Բիւզանդիոն, Թ. 253. Մանզումէ, Թ. 154):

Վտարանդին (Մասիս, 1886 Նոյեմ. 15, Թ. 3848) կ'ըսէ թէ՝ «Մունճուսունցիք պանծալի անցեալ մը ունին եւ այժմ եւս կ'որորուին անցեալին վարդագոյն երազներով:

«Ազգիս տուած են ամիրաներ, վարժապետներ, վարդապետներ եւ կառավարութեան եւս պաշտօնեաներ, որք գիւղէն դուրս մեծ ծառայութիւններ մատուցած են եւ յիշատակներն անջնջելի մնացած են:

«Ս. Կարապետի վանքը դարուս սկիզբէն մինչեւ երեք քառորդն իւր զաւակներն կառավարած են ամենայն յաջողութեամբ եւ յոյժ նախանձելի կերպով եւ այսօր Կեսարիոյ թեմին արժանաւոր քահանայք իւր հարազատ որդիներն են:



Պոլսոյ ազգային գործերն եւս կառավարած է տալով Օսեան Պօղոս ամիրայի, Այվասեան Յովհաննէս աղայի եւ այլոց պէս երեւելի անձնաւորութիւններ: ... Ցաւալի է որ անմիաբանութեան պատճառաւ ի բազմաց հետէ հոս ալ կը թագաւորէ. ազգայինք միշտ պառակտեալ են երեք չորս կուսակցութեանց, որք երբեմն կը համաձայնին եւ շատ նուրբ քաղաքագէտներ լինելով երբեմն կը զատուին: Ամէն պարագայի մէջ դպրոցը կամ եկեղեցին է որ կը տուժէ:

«Երկու ընկերութիւններ ունեցած են. մին *Հողագործական Ընկերութիւն*(1), որ նպատակ ունի եղեր դրամագլուխը շատցնելով կանոնաւոր դպրոց մը բանալ. բայց թէեւ բաւական դրամագլուխ ժողված է, մասնաւորաց հաճոյից կը ծառայեն: Միւսն ունի կալուածներ 'ի Կ. Պոլիս, որոնց եկամուտով կը կառավարէ իւր դպրոցը»:

Այս կալուածներն ալ իրենց հետաքրքրական մէկ պատմութիւնը ունին: Անոնք կը բաղկանային Կ. Պոլիս Թավուգ-բազարի մէջ պան



ՄՈՒՆՃՈՒՍՈՒՆԻ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻԻՆ ՎԵՐԱԲԱՑՈՒՄԸ 1918ԻՆ
(Իսլամացած Հայերը քրիստոնէութեան կը դառնան՝
Եկեղեցիին բակը պատարագի միջոցին)

դոկէ մը և Նուրի-Օսմանիյէի մէջ սրճարանէ մը (Մուրհանդակ, Թ. 2185) որոնց մատակարարութիւնը յանձնուած էր Կ. Պոլսոյ պատրիարքարանին:

1905ին երեւան կու գայ թէ պատրիարքարանի պաշտօնեաներէն դիւանադպիր մը 1896–97 թուականներուն պատրիարքարանի մէջ տի-

(1) Այս ընկերութիւնը կազմուած է 1863 Սեպտեմբերին: Ունէր 246 բաժանորդ: Իւրաքանչիւր անդամ կը վճարէր 5 ղրշ. անդամավճար և 50 ղրշ. մուտք մը: Ընկերութիւնը արդէն 1865ի վերջը ծախու առած է 5 արտ Մունճուսունի մէջ և թթաստանի վերածած (տես Վարագայի Հավատիս, 1865, Դեկտ. 25, Թ. 273):

րող անիշխանութենէ օգտուելով ինքն գանձած էր այդ կալուածնե- րուն վարձքերը տարիներով (Մանզումէ, թ. 1333)։

1915ի ԱՂԷՏԸ.

Մունճուսուն եւս զոհ եղած ; տարագրութեան իր բոլոր Հայ բնակչութեամբ, առանց յարանուանութեան խտիրի։

Չենք գիտեր թէ ի՞նչ եղան և ո՞ր ճամբաներուն վրայ ջարդուեցան։ Հաւանական է որ Կեսարացի ուսուցիչի մը տեղեկութեան համաձայն անոնք ջարդուած ըլլան իրենց մահու ճանապարհին ընթացքին 'ի Ֆուրունճուլար (Մալաթիոյ մօտ)։

Գիւղին քահանան Պետրոս քհ. Իզմիրլեան(1) իր հօտին հետ կորսուած է և աներևութացած և չի գիտցուիր թէ ի՞նչպէս վախճանած է։ Իսկ Մունճուսունի կաթոլիկ Հայոց հովիւը՝ Հ. Յարութիւն վրդ. Լաչինեան(2) տարագրուած է մինչև Մէնպիճ, ուր վախճանած է ծայրայեղօրէն թշուառ վիճակի մէջ։

ՋԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՑԵՏՈՑ.

Ջինադադարէն յետոյ գիւղ դարձած էին 50 տուն Հայեր որոնք յետոյ կիսով չափ պակսեցան գաղթելով Կեսարիա և այլուր։ 1924ին հոն կ'ապրէին 105 և 1926ին 95 անձեր։ Մնացածները շնորհիւ տեղւոյն բարեբեր հողին, անկարօտ կ'ապրին։

Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան, 1919ին կ'այցելէ այս գիւղը։ Հոն կը գտնէ Ս. Աստուածածին եկեղեցին քայքայուած և կը պատարագէ Հայ-կաթոլիկներու մատուռին մէջ, կը մկրտէ նաև անկնունք բոլոր փոքրիկները և կը կազմէ Թաղ. Խորհուրդ մը։

Սակայն երբ իրենց մէկ կարեւոր մէկ մասը կը ցրուի, մնացորդները «գործնական մարդիկ» իրենց եկեղեցին որ պզտիկ նորոգութեամբ մը կարելի էր գործածել, կը ծախեն Թուրքերուն և իրենք կը մնան առանց եկեղեցիի։

# XI

# ՆԻՐՁԷ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՊԱՏ

Էֆքէրէէն երեք քառորդ և Կեսարիայէն երեք ժամ հեռու գիւղ մըն է Նիրզէ(3) և կը գտնուի քաղաքին հիւսիսային արեւելեան կողմը, գեղեցիկ ձորի մը մէջ, այգիներով և պարտէզներով շրջապատուած։

(1) Այս արժանաւոր քահանան տակաւին նորընծայ ուշագրաւ գիրք մը գրուած է (Մասիս, 1886, թ. 3848)։ Ծնած էր Մունճուսուն, 26 Դեկտ. 1851ին։ Աւազանի անունն Պօղոս և որդի Տ. Պետրոս քհնյ.ի։ Աշակերտ Ս. Կարապետի վանքին։ 13 Մարտ 1884ին Կեսարիոյ Առաջ. Եղիա եպ. Դերձակեանէ կը ձեռնադրուի։ Անդամակցած է Կեսարիոյ Գաւառական և Կրօնական ժողովներուն։ 1897ին իրեն համար թղթակից մը կը գրէր (Բիւզանդիոն, թ. 253) թէ անիկա իր գիւղին ամենայն ինչն էր և դատաւորը՝ վէճերու, լաւ որսորդ և քաջ հեծնող։

(2) Ծնած է 1864ին Էվէրէկ, ուսած է Զմմառ և քահանայ ձեռնադրըուած է 1886ին (ՀԱ. 1920, էջ 49)։

(3) Սիմէոն Դպիր Լեհացի Նիզիա կամ Նիւսիա անունով կը յիշէ։



Օդը մաքուր է և առողջարար։ Կանոնաւոր փողոցներ ունի։ Առանց բացառութեան բոլոր փողոցները զառիվեր են։ Տուները քարաշէն, գեղեցիկ տաշուած քարերէ, իրարու միացած են թէ՛ տանիքով և թէ՛ տակէն գետնափոր ուղիներով։

Այս գիւղին արտերէն աւելի ուշագրաւ են այգիներն, որոնք կը շրջապատեն գիւղը չորս կողմէն։ Եթէ տանիք մը ելլէր մարդ և չորս կողմը դիտէր, մանաւանդ գարնան, պիտի տեսնէր ահագին տարածութեամբ կանանչութիւն որ ընդհանրապէս ծառերէ կը բաղկանար ինչպէս խնձորենիներէ, տանձենիներէ, ծիրանիներէ, սալորենիներէ, ընկուզենիներէ և այլն (Տես Սենեքերիմ Խտըրեան, Համառօտ Պատմ. Կեսարիոյ Նիրզէ գիւղի, 1918, էջ 30)

Ձորը որուն մէջ կառուցուած է Նիրզէ կը կոչուի Սիւլիւֆլիւ։ Ան շրջապատուած էր կաղամախիներով և ուռենիներով։

Գարնան ժամանակ, այդ ձորին տեսարանը՝ շատ գեղեցիկ և զուարճալի է, դալարիքը և կանանչութիւնը, բնութեան ամէն հրաշալիքը, մեծ ու փոքր թռչուններու հեշտալուր գեղգեղանքը՝ մեծ հաճոյք կը պատճառեն անցորդին։

Ձորին արեւելեան կուշտին վրայ կը տարածուէր Նիրզէ գիւղին Տաճկաց գերեզմանատունը, իսկ արեւմտեան կուշտը կը ձեւացնէր դժուարաէջ բլուր մը, որ Կէլին Էնմէզ տիտղոսով կը պանծայ։ Երբ բարձրացուի բլուրի կամ զառիվերի մը գագաթը, կը պարզուի ընդարձակ և անբեր դաշտի մը տեսարանը որ քառորդ մը կը տեւէ մինչեւ Էֆքէրէ գիւղ և կը վերջանայ Կարմիր Դերամ անուանեալ զառիվարի մը ծայրով։

Կէլին Էնմէզ գագաթէն հիւսիսային ուղղութեամբ, ուղղակի կամ արեւմտեան ուղղութեամբ Կիւվէրչինլիք կոչուած ձորի մը մէջէն՝ կ'իջնուի Էֆքէրէ գիւղը։

Կիւվէրչինլիք կոչուած այս ձորը, ինչպէս որ անունն ալ կը յայտնէ՝ կը պարունակէ իր երկու կուշտերուն վրայ հարիւրաւոր աղաւնետուններ, որոնց հիւերերուն սիրուն մնչիւնը անցորդներու ուշն և զուարթ կը գրաւեն, մանաւանդ գարնան ժամանակ։

Այս ձորին մէջ գտնուած ճանապարհն օձապտոյտ է և կը բաժնուի երեք ճիւղերու, որոնց մին ուղեւորն կ'առաջնորդէ դէպ ի Ս. Կարապետի նշանաւոր վանքը (Արեւելեան Մամուլ, 1897, էջ 281-283)։

Սիւլիւքլիւք ձորին մէջտեղէն կ'անցնի Սալղումա կամ Սալղմա (1) Սույու կոչուած առուն որ ջաղացք մը դարձնելու չափ ուժ ունի և միակ ջուրն է որ կոչուած է ջրելու 3-4 գիւղեր՝ ինչպէս Նիրզէի, Կասիի, Մանճունի այգիները։ Իր այս օգտաշատ դերը պատճառ եղած է որ շատ անգամ անիկա առիթ դառնայ արիւնահեղութեան, վասնզի կռիւը ամէն օրուան գործ է այդ ջուրին համար, որ Հայ Նիրզէցիք կը կոչէին Սոկօ։

Նիրզէ իր իրապէս գեղազուարճ դիրքովը Կեսարացւոց օդափոխութեան վայրերէն մին էր։

ԱՆՑԵԱԼ.

Նիրզէի վայրը հաւանօրէն ամենահին ժամանակներէ սկսեալ բնա-

(1) Այս անունը առած է իր ակն Սալըղմայ Թրքաբնակ գիւղին մէջ ըլլալուն համար։

կավայր մը պէտք է եղած ըլլայ։ Աւոր փաստն է 5-10 րոպէ հեռաւորութեամբ անագին մեծութեամբ շինուած քարայրները որոնց մէջ կարելի է մէկ երկու հազար հոգի պատսպարուիլ (Սենեքերիմ Խտըրեան, նոյն էջ 30)։

Հ. Ղ. Ինճիճեան կը կարծէ թէ ան հին Նիւսան է որուն եպիսկոպոս կարգուեցաւ 371ին Գրիգոր Նիւսացի իր եղբօրը Ս. Բարսեղի ձեռնադրութեամբ։ Քիր. Լէվիտիս ընդհակառակը կը պնդէ թէ Նիւսան է այժմու Նէվշէհիրը (կամ անոր մերձաւոր Նար գիւղն է աւելի) իսկ Նիրզէն կը կարծէ թէ Նիրասսօսն (Νηρoασσoς) է «Ջրաբբի վասն բազմութեան առուաց և աղբերականց անդ» (Բիւրակն, 1899, էջ 602)։

Տրդատ եպ. Պալեան նաև այս կարծիքը ունի (Լոյս, 1906, էջ 580)։

Արդի գիւղը ոչ մէկ փառք ու անցեալ յիշեցնող յիշատակարան կը պարունակէր, իր կազմութեամբ անշուշտ նոյն տեղւոյն կամ մօտերը գտնուող ուրէ հին քաղաքի մը հետ կապ մը չունենալով, բայց հնութեան բեկորներ, եկեղեցիներու աւերակներ, ուխտավայրեր, աւանդութիւններով առլցուն վայրեր, չուրջ բոլորը գրեթէ ամէն կողմ կը տեսնուին։

Այսպէս գիւղին արեւելեան կողմը կար աւերակ եկեղեցի մը Ս. Աստուածածին անունով (Ինճիճեան, Աշխ., Ա. 316), իսկ արեւմտեան կողմը՝ հոն ուր «Հայր Աբրահամ» կը կոչուէր, կային վեց մեծ խաչեր (Նոյն)։ Հաւանօրէն ասոնք հնօրեայ եկեղեցիներու տեղեր էին։

Գիւղին ճիշդ դիմացը կար քարէ փորուած եկեղեցիի ձեւով հին շինութիւն մը որ Եօքսիւզ ժամ (Որբ Եկեղեցի) կը կոչուէր։ Ինչպէս անունէն կարելի է մակաբերել անիկա լքուած (որբացած) եկեղեցի մըն էր։

Անոր երկու կողմերն կը գտնուէին երկու ժողովրդային աւանդութիւններով սրբագործուած վայրեր, Կաթ Աղբիւր և Ծակ Քար անուններով (Ս. Խտըրեան, նոյն, էջ 29)։

Կաթ-Աղբիւր գիւղէն 10 վայրկեան հեռաւորութեամբ դէպի հարաւարեւելք, այգիներու մէջ կամարաձեւ շինուած կիսախարխուլ աղբիւր մըն էր, որուն մասին աւանդութիւններ ունէին գիւղացիք։ Մայիս 7ին բոլոր Նիրզէցիք առանց բացառութեան, առաւօտեան արշալոյսին, իրենց կովերը Կաթ-Աղբիւր կը տանէին, որպէսզի անոնց կաթը շատնար, իսկ կէս օրին հոն կը կատարուէր ուխտագնացութիւն, մատաղ և խրախճանք (1) (Ս. Խտըրեան, նոյն էջ 28)։

Կաթ Աղբիւրին մօտ ապառաժի վրայ կար գերեզմանաձեւ փորուածք մը, որուն համար կ'ըսէին թէ Ս. Աննայի գերեզմանն է։

Գալով Ծակ Քարին ապառաժ մըն էր, չորս կողմը ծակ, և կը գտնուէր գիւղէն հինգ վայրկեան հեռու դէպ ի արեւմուտք ձորին վրայ։

Անքուն երախաները այս քարէն կ'անցնէին (Նոյն, էջ 29)։

Ասոնք ամէնը ցոյց կուտային թէ Նիրզէ հնօրեայ բնակավայր մըն էր, դարաւոր և թերեւս հեթանոսական շրջանէ եկած հասած հացորդներով և աւանդութիւններով։

---

(1) Առանց գիւղին անունը տալու՝ «մեր գիւղին» բացատրութեամբ գեղեցիկ գրական էջ մը ունի «Կաթն Աղբիւր» խորագրով, Նիրզէցի ուսուցիչ Վ. Ս. Քիւրքճեան (տես Բիւրակն, 1899, էջ 360)։



Նիրզէի մերձաւոր անցեալի կեանքի մէջ ամէնէն նշանակելի դէպքը եղած է 1846ի մեծ երկրաշարժը որ մեծ վնասներ հասուցած է գիւղին։ Գիւղացիք այս առթիւ շարաթներով կալերը՝ վրանի տակ բնակելու ստիպուած են։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Անցեալ ԺԹ. դարուն սկիզբը ինչպէս Հ. Ղ. Ինճիճեան կը վկայէ Նիրզէ կամ Նիզիէ ունէր 300 տուն բնակիչ «խառն յերից ազգաց եւս» (Աշխարհ. Ասիա, Ա. 316)։

1886ին Վտարանդին 160 տուն Հայ և նոյնքան ալ Թուրք բնակիչ ունի կ'ըսէ Նիրզէ և ցոյն բնակիչներուն խօսքը չ'ըներ (Մասիս, Թ. 3848)։

1915ին տարագրութենէն առաջ գիւղին հայութիւնը կը հաշուուէր 186 տուն ըստ Թէոդիկի (Գողգոթա) և 150 ընտանիք 762 անձով ըստ Սենեքերիմ Խտըրեանի (Պատմ. Նիրզէ, էջ 131) որ մի առ մի իրենց անուններով նշանակած է այդ 150 ընտանիքներուն պետերուն անունները, իւրաքանչիւր ընտանիքի անդամներուն թիւերով (տես նոյն, էջ 126-131) և իրենց հարստութեան քանակով որ կը հաշուուի ընդամէնը 125.550 ոսկի (Նոյն, էջ 131)։

ՀԱՅԵՐԸ Ի ՆԻՐԶԷ

Կեսարիոյ շրջանին ամէնէն հին հայաբնակ դարձած վայրերէն մին է, վասնզի իր մօտն հազիւ քառորդ ժամ հեռու կը գտնուէր Կեսարիոյ Հայոց հնագոյն վանքերէն մին՝ Ս. Գրիգոր Նիւսացւոյ վանքը։

Աւանդաբար կը պատմուէր թէ գիւղը կազմուած էր ընդհանրապէս Տէրսիեաhէն, Կէօմիւրկէն և Կասիէն եկած գաղթականներէ (տես Սենեքերիմ Խտըրեան, նոյն, էջ 15)։ Այսպէս, Սենեք. Խտըրեան (Նոյն, էջ 37) գիտէ թէ իր ընտանիքին նախահայրը՝ Խտըր աղա, 1765ին Նիրզէ գաղթած է Տէրսիեան գիւղէն։

Ամէն պարագայի մէջ այս գիւղը հայաբնակ դառնալ սկսած էր ԺԸ. դարէն սկսեալ և ԺԷ. դարուն ունէր իր Հայ եկեղեցին, և կը յիշուէր նոյն և յաջորդ ԺԸ. դարուն իբր Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ վայր մը։

Սակայն նախապէս կը թուի թէ շատ մեծ թիւ մը չունէին։ Տակաւին 1850ական թուականներուն անոնք հազիւ 50-60 տուներէ կը բաղկանային (Սենեք. Խտըրեան, նոյն, էջ 15)։ 1852ին 10 տուն Հայեր ալ Թոմարզայէն կու գան, սակայն իրենց պատճառով գիւղին մէջ երկպառակութիւն կը ծագի և պայքար կը բացուի հիններուն և նորերուն միջեւ և վերջապէս գործը հոն կը յանգի որ Թոմարզայէն եկողները կը վռնտուին գիւղէն և 4-5 տարի Թուրք գիւղեր կը թափառին և ապա Կեսարիոյ առաջնորդին միջամտութեամբ կը դառնան և կը հաստատուին Նիրզէ (Նոյն):

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ.

Գիւղը ունէր . Թoրոս անուն եկեղեցի մը, որուն անդրանիկ յիշատակութեան կը հանդիպի 1ին։ «Նուսացի (=Նիրզէ) Մահտեսի Սէֆար» գնելով նոյն տարին Կ. Պոլիս Մկրտիչ քհ.ի ձեռամբ գրուած Աւետարան մը «ետ ի յիշատակ ի դուռն սուրբ Թորոս եկեղեցւոյն...»։

Այս եկեղեցին անշուշտ քանի մը անգամ նորոգուած և վերա-

շինուած պէտք է ըլլայ։ Անոր վերջին շինութիւնը եղած է 1851ին։ Եկեղեցին որքան որ նոր շէնք մը չէր, բայց շատ գեղեցիկ շինուածք մը ունէր և իր դիրքով բոլոր գիւղին վրայ կ'իշխէր։

Ընդհանուր պատերազմէն քիչ առաջ շինուած էր զանգակատուն մը։

ՀԱՅ ԴՊՐՈՑ.

1886ին ունէին շատ անկանոն դպրոց մը 45 աշակերտներով. աղջիկներու դպրոց չի կար այդ թուականին (Մասիս, թ. 3848)։ Միակ ուսումն էր Սաղմոս, և ժամագիրք կարդալ սորվիլ։

Այս յետամնաց վիճակը շարունակուեցաւ մինչև 1895, որմէ յետոյ Նիրզէցիք իրենց դպրոցին զարգացման աշխատեցան։

Նախ եկեղեցիին կողքին կառուցին դպրոց մը, որ իրեն բարձրութեամբ և օդասուն դիրքով Նիրզէի մէջ առաջին շէնքն էր։ Դըպրոցը ունէր սերտարան մը 150-200 աշակերտ պարունակելու չափ ընդարձակ, դասարաններ, ինչպէս նաև մութ ու խոնաւ անկիւն մը սատանայատուն (ճիզիկ) կոչուած ուր կը բանտարկէին յանցաւոր տղաքը։ Ունէր նաև գեղեցիկ պարտէզ մը։

Իսկ հին դպրոցը փլատակ եղած էր և իբր զբօսավայր կը գործածուէր (Սեննեքերիմ Խտըրեան, Համառօտ Պատմ. Կեսար Նիրզէ գիւղի, էջ 23-24)։

1901ին կազմուած վիճակագրութեան մէջ կը տեսնուի թէ տեղւոյն Ներսէսեան դպրոցը ունէր 80 աշակերտ (աղջիկ չկայ) և երկու ուսուցիչ և 60 ղրշ. ամսական ծախք, ամբողջութեամբ եկեղեցիին սնտուկէն առնուած։

1908ի խաբեպատիր Սահմանադրութենէն յետոյ 1910ին Նիրզէցիք սկսան շատ աւելի մեծ զոհողութիւններ ընել կրթական գործին։ Վարժարանին տարեկան ծախքը մօտ 100 ոսկիի բարձրացուցին։ Դպրոցին մէջ հայերէն, թուրքերէն, անգլերէն և ֆրանսերէն աւանդուիլ սկսաւ և ուսուցչաց թիւը բարձրացաւ 2-3ի։ Գիւղացիք ամէնքն ալ սորվեցան իրենց զաւակներու ուսման համար թոշակ վճարել և դըպրոցը եկեղեցիին վրայ այլևս բեռ չեղաւ (Ս. Խտըրեան, նոյն, էջ 24)։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ.

Նիրզէցիք ընդհանրապէս կ'զբաղէին երկաթագործութեամբ, դանակագործութեամբ, կտաւագործութեամբ։ Կային նաև խանութպաններ և վաճառականներ, իսկ հողագործութեամբ գրեթէ պարապող չի կար, այնպէս որ Հայոց արտերը Թուրքերը կը վարէին և կը ցանէին (Ս. Խտըրեան, նոյն, էջ 30)։

Նիրզէի բնակիչները ամէնքն այգի կամ պարտէզ ունէին (Նոյն, էջ 20)։ Գիւղին մեծամասնութիւնը ապահոված էր համեստ ապրուստ մը, որով թէև գրեթէ հարուստ չի կար սակայն նոյն ատեն աղքատ ալ բնաւ չի կար (Նոյն, էջ 30)։ Ասով հանդերձ տնտեսական անձուկ պայմանները, իրենցմէ անոնք որ հարստանալու տենչ ունէին, մղած են գաղթականութեան, որ ինչպէս Կեսարիոյ և շրջակայից համար հին սովորութիւն մըն էր, Նիրզէի համար ալ վաղեմի դրութիւն մը եղած էր։ Ասոր ապացոյցը մեզի կու տար 1651ին իսկ Նիրզէցիներու գոյութիւնը ի Կ. Պոլիս, ինչպէս տեսնուեցաւ։ Արդարև Նիրզէէն միշտ պանդուխտներ գտնուած են վաճառաշահ քաղաքներու մէջ։



1890ին առաջին անգամ 3-4 Նիրզէցիներ կ'երթան Ամերիկա և Լօրէնս 6-7 տարիներ մնալէ յետոյ կը դառնան երկիր և կ'ենթարկըւին Համիտեան կառավարութեան խստութեանց։ Այս պատճառով ոչ ոք կը համարձակի Ամերիկա երթալու վրայ խորհիլ։

Սակայն 1908ի Օսմ. Սահմանադրութենէն յետոյ օգտուելով երթեւեկի դիւրութիւններէն, 1909ին գաղթը կ'սկսի դէպ ի Ամերիկա, և հինգ տարի յետոյ 130 տունէ բաղկացեալ Նիրզէէն 70 մարդ կար Ամերիկա, մեծ մասամբ Ուսթրթաուն հաստատուած։ Ասոնք 1913 Մայիս 1ին «Կեսարիոյ Նիրզէ գիւղի Կրթասիրաց Միութիւն» մը կը կազմեն։

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՊԱՆԴԸ ԵՒ ՆԻՐԶԻ.

Նոյնիսկ 1896ի դէպքերուն Նիրզէ ենթարկուած է Թուրք խուժանին յարձակման և թալանուած են 5-10 տուներ և սպանուած՝ միայն քանի մը հոգի, շնորհիւ դրացի Թուրքերու բարեացակամութեան։ Այդ Թուրքերը խուժանին դէմ ելած՝ զէն ի ձեռին փողոցներուն բերանը կեցած են, սպառնալով սպանել անցնիլ յանդգնողները (Ս. Խտըրեան, նոյն, էջ 32)։

Իսկ 1915ի աղէտի տարին Նիրզէի Հայերը եւս ենթարկուեցան տարագրութեան և գրեթէ ամբողջութեամբ բնաջնջուեցան իրենց երկու քահանաներով(1) բոլորովին անծանօթ պայմաններու մէջ։ Հաւանօրէն յայսկոյս Արգէոսեան միւս Հայ գիւղերու նման անոնք ալ մահացած են ի Ֆուրունճուլար։

Իսկ Նիրզէի գեղեցիկ այգիները շրջակայ Թուրք գիւղացիները տարած էին։ Մի քանի անհատներ, իբր արհեստաւոր կը մնան գիւղը։

Զինադադարէն յետոյ ժամանակաւոր կերպով 4-5 անձ գացած են հոն սակայն չեն կրցած ապրիլ և մեկնած են։

XII

# ՏԱՐՍԻԵԱԽ ԿԱՄ ՏԱՐՍԻԷՋ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔ.

Նիրզէէն Ս. Գրիգոր Նիւսացւոյ վանքը տանող ճամբան շարունակելով կը հասնինք քառորդէ մը Տարսիեախ յոյն գիւղը, շրջապատուած պարտէզներով։

Այս գիւղին ճիշդ արեւելեան ծայրը կը գտնուէր յունական համ-

---

(1) Այդ երկու քահանաներն էին, Յովհաննէս քհ. Սարեան և Յարութիւն քհ. Քէլէշեան։ Առաջինը ծնած է 1874ին Էգրէկ. աշխարհական անունով Գրիգոր։ Ուսած է Աղիզիյէ Միացեալ Ընկ.եան վարժարանը և ապա ուսուցիչ երկար ատեն հոն և իր ծննդավայրը։ 30 Յունիս 1911ին Եօզղատի մէջ քհնյ. կը ձեռնադրուի Խորէն եպ. Դիմաքսեանէ և կը քահանայագործէ վեց ամիս Ազիզիյէ, նոյնքան Տարսոն՝ ուր նաև այցելու կրօնուսոյց, յետոյ Մանճըսըն, իսկ 23 Յունիս 1912էն ի վեր Նիրզէ։

Իսկ Տ. Յարութիւն քհ. Քէլէշեան ծնած է 1874ին Կէմէրէկ և 1909ին ձեռնադրուած է Ստեփան եպ. Սանտալճեանէ իր ծննդավայրին վրայ, ուրկէ յետոյ Նիրզէ փոխադրուած է։

բաւաւոր Թարսիարխիս (Ταξίαρχος = Հրեշտակապետք) վանքն որմէ առած է հաւանօրէն գիւղը իր անունը։ Այս վանքն այլազգիք կը կոչէին Եանար-Թաշ։ Հ. Ղուկաս Ինճիճեան կը հաւաստէ թէ այս վանքը կուսանաց վանք մըն էր և իր թրքերէն կոչումը առած էր խորանին վրայ գտնուած հրագոյն վառեալ քարէն (Աշխարհ. Ա. էջ 316)։

Վանքը ունէր փառաւոր եկեղեցի մը՝ յատկացուած Կիրակի և տօնական օրերու և փոքրիկ մատուռ մը՝ ամենօրեայ պաշտամանց համար։ Հոն մատրան վրայ կառուցած էին փառաւոր դպրոց մը, որ պարապ կը մնար։ Վանքին մէջ կային 20–25 սենեակներ և երկու պարտէզներ։ Իր միաբանութիւնը կը բաղկանար վարդապետէ մը և մի քանի հատ գործաւորներէ։

Եանար-Թաշ հասարակաց ուխտատեղի մըն էր Հայ, Յոյն և Թուրք հիւանդներու համար, որոնք հոն կը դիմէին կարդացուելու։

Յոյները ունէին ուրիշ եկեղեցի մըն ալ ժողովրդեան համար գիւղին արեւմտեան կողմը, ուր կը պաշտօնավարէր քահանայ մը։ Այս եկեղեցիին կից էր Յունաց թաղային դպրոցը։

Տարսիեախ Ս. Կարապետի վանքէն միայն կէս ժամ հեռու էր և ինչպէս ըսինք հազիւ մէկ քառորդ՝ Ս. Գրիգոր Նիւսացւոյ վանքէն։

Արդ, Հ. Ինճիճեան կ'ըսէ թէ «ընդմէջ վանաց սրբոյն Գրիգորի եւ սրբոյն Կարապետի է մասունն ի զուարճալի վայրի եւ ի մէջ նորա աւազան ջրոյ» (Նոյն, էջ 316)։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

ԺԹ. դարուն սկիզբը գիւղը ունէր 300 տուն «խառն ի Հայոց, ի Յունաց եւ ի Տաճկաց» (Ինճիճեան)։ Նոյն դարուն վերջերը (1897ին) հոն կը բնակէին 149 տուն(1) Թուրք, 99 տուն Յոյն և 9 տուն Հայ՝ համագումար 248 տուն բնակիչ (Արեւելեան Մամուլ, 1897. էջ 281)։

Երբեմն այս գիւղը ունեցած էր բաւական կարեւոր թուով Հայ բնակչութիւն մը, որուն վերջին մնացորդները, վեց տուն Հայ դեռ հոն կը բնակէին 1886ին (Մասիս. թ. 3848)։

1915ին հոն կար դեռ 5 տնուոր Հայ (Թէոդիկ)։

ԹԱՂԵՐ.

Տարսիեախ երկու թաղի կը բաժնուէր Տարսիախ Սույու անուն փոքրիկ առուակով մը, որուն ակունքը կը գտնուի՝ գիւղէն քիչ մը հեռու այգիներուն մէջ։

ՀԱՅԵՐԸ 'Ի ՏԱՐՍԻԵԱԽ

Հայերը 'ի Տարսիեախ հաստատուած պէտք է ըլլան բաւական հին ժամանակներէ սկսեալ։ Գոնէ առնուազն 1661էն քիչ յետոյ այդ գիւղին մէջ Հայեր գոյութիւն ունէին և իբր Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ թեմ կը վճարէին որոշ քանակութեամբ պտղի։ 1732ին կը յիշուի Տարսիեախ գիւղացի Ղազար աբեղայ մը որ գրած է երկու ձեռագիրներ երկուքն ալ հաւաքածոյ (Կ. Պոլսոյ Ազգ. Մատենադարանը պահուած. թ. 107 և 108 ձեռագիրները)։

Յաջորդ ԺԸ. դարուն տակաւին անոնք ունէին կարեւոր թիւ մը և կը կազմէին նոյն առաջնորդութեան թեմերէն մին (Զամբռ)։ ԺԹ.

(1) 1872–1873ին Թուրք տուներու թիւը միայն 60 էր։



դարուն սկիզբը Ինճիճեանի գրածներն ալ կը հաստատեն թէ Հայերը դեռ հոն թիւ մը ունէին։

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

Այս գիւղին մէջ Հայերը ունէին հին ոճով փոքրիկ եկեղեցի մը Ս. Անդրէաս անունով «կամարաշէն» ըստ Ինճիճեանի։

Դժբախտաբար իր մասին ուրիշ ծանօթութիւն մը չունիմ։ Սակայն կրնամ վստահութեամբ ըսել թէ այս գիւղին մէջ ԺԷ. դարէն սկսեալ պէտք էր որ եկեղեցի մը գտնուած ըլլար։

Այս եկեղեցին 1880ական թուականներէն սկսեալ գոց կը մնար (Մելքոն Աստուր, Պալատի յիշատակարան, էջ 97), և 1897ին այցելու մը կ'ըսէր թէ իր քանի մը պատկերներէն և քանի մը եկեղեցական հին գիրքերէն զատ ոչինչ կար։ Գիւղը այդ թուականին արդէն քահանայ չունէր (Արեւելեան Մամուլ, 1897, էջ 281)։

Նիրզէ գիւղի քահանան պէտք եղած ժամանակ անմիջապէս կը հասնէր, որովհետեւ հազիւ 10 վայրկեանի ճամբայ էր (Նոյն)։

Տարսիեախ ունեցած է նաեւ Հայ դպրոց մը։ 1872–73ին կը յիշուի թէ ան ունէր վարժարան մը 12 աշակերտով և տարեկան 500 ղրուշ ծախքով որ կը հայթայթուէր Սերովբէ Սահակեանի և Աբրահամ Կիւլպէնկեանի անհատական նուիրատուութեամբ (տես Համ. Կեդր. Վարչ. 1872–73. Գաւառ. վիճակ. էջ 61)։

Այս վարժարանը շուտով փակուած է ի չգոյէ բնակչութեան։

1915Ի ԱՂԷՏ.

Տարսիեախ չունենալով Հայ բնակիչ պահ մը ապաստան եղած է մերձակայ գիւղերու փախստական Հայոց, 1915ի աղէտի օրերուն, որոնք սակայն ի վերջոյ չեն կրցած ինքզինքնին ծածկել և տարագրուած են։

XIII

# ՍՊԸՏԸՆ ԿԱՄ ԸՍՊՏՈՆ

Սիմոն կաթողիկոս Երեւանցի իր Ջամբռին մէջ (էջ 45–46) Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ հայաբնակ վայրերուն շարքին կը յիշատակէ Տարսիեախէն անմիջապէս յետոյ և Կասիէն առաջ Ըսպտոն անուն վայր մը։ Տրդատ եպ. Պալեան ալ ձեռագիրի մը մէջ հանդիպելով պտղիներու ցուցակին մէջ Ըսպրտա անուն գիւղի մը յիշատակութեան, կը գրէ թէ Սպըտան գիւղը կայ բայց այժմ հայաբնակ չէ (տես ԼՈՅՍ, 1906. էջ 647–8)։ Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, 1899, էջ 602) կը հաստատէ թէ Սպըտըն անուն գիւղ մը կար։ Եւքառացի Կարապետ վարժապետ Կէօզլիւքլիւ մականուանեալ, որ 1850–1875 Խիկարը կը համարուէր գաւառին և շատ խորունկ կարդացող, այս բառը կը մեկնէր սպետսուն, ծիծաղելի քաշքշուքով մը (Բիւրակն, 1899, էջ 602)։ Արդարեւ Մուճուսունի հիւսիս արեւելեան կողմը կը գտնուէր այս անունով գիւղ մը, որ վաղուց դադրած էր հայաբնակ ըլլալէ։

Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, 1899, էջ 602) մինչեւ 1850ական թուականները և Պ. Ս. Փօղոսեան (Արեւ, թ. 4828) մինչեւ 1890ական թուականները կը կարծեն թէ այս գիւղը Հայ բնակիչ ունեցած է։

Հ. Ղուկաս Ինճիճեան 1806ին այս գիւղը «ի ձորամիջի» կը յիշէ

Ուսպուտում անունով, և կ'ըսէ թէ «յորում են իբր 150 տունք տաճկաց» և չի յիշեր բնաւ Հայ բնակիչ ունենալը։ Հետեւաբար կը կարծեմ թէ աւելի կանուխ պէտք է ցրուած ըլլան այդ տեղի Հայերը։

Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, Նոյն) կը հաստատէ թէ անոնք եկեղեցի ալ ունէին, բան մը որ ուրիշ կողմէ չէ հաստատուած։

## XIV

# ԱՂԸՐՆԱՍ

Ս. Կարապետի վանքէն դէպ ի հիւսիս, մէկուկէս ժամ հեռաւորութեամբ կը գտնուէր Աղըրնաս գիւղը, ուր ծննդավայրը եղած է Նշանաւոր Սինան Գալֆայի։

Աղըրնաս ԺԶ. դարուն դեռ հայաբնակ՝ յետոյ դատարկացած է մեծ մասամբ Հայերէ երբ Սուլթան Սէլիմ Բ.ի հրամանով Կեսարիոյ շրջակայ Հայ գիւղերուն բնակիչները տեղահանուած և Կիպրոս փոխադրուած են 1573ին (Մելքոն Ասատուր, Երեմդարեան պատմութիւն Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ Պալաթու, էջ 97-98. Պիմէն Զարդարեան, Ճարտարապետ Մեծն Սինան, տես Գրպանի Տարեցոյց, 1932, էջ 199–206)։

Գիւղը կը պահէր իր գոյութիւնը և զուտ թրքաբնակ էր։

Իր շրջակայքէն կը հանուի մեծ առատութեամբ գաճ։

Զինադադարէն յետոյ 1926ին, վեց Հայեր վերջին Քէմալական տեղահանութիւններէն յետոյ, հոն հաստատուած էին։

## XV ԵՒ XVI

# ՊԷՕՅԻՒՔ ԵՒ ՔԻՒՉԻՒՔ(1) ՊԻՒՐԻՒՆԿԻՒԶ

Այս երկու գիւղերը Նիրզէի աւելի մօտ կը գտնուին քովքովի անոր և Աղըրնասի միջև։

Այս երկու գիւղերն ալ երբեմն հայաբնակ և չէն գիւղեր էին որոնք հաւանօրէն դատարկացած են Սուլթան Սէլիմ Բ.ի հրամանով Կիպրոս փոխադրուած ըլլալով 1573ին (Մելքոն Ասատուր, Երեմդարեան Պատմ. Ս. Հրեշտակապ. Եկեղ. Պալաթու, էջ 97–98. Պիմէն Զարդարեան, Ճարտարապետ Մեծն Սինան, Գրպանի Տարեցոյց, 1932, էջ 198–206)։

## XVII

# ԷՐՔԻԼԷԹ

ՎԱՅՐ ԵՒ ԴԻՐՔ.

Այսրարգէոսեան շրջանին մէջ՝ ընդհանրապէս հայաբնակ արեւելեան կողմը տարածուած գիւղերէն անջատ՝ այս անգամ դէպ ի արեւմուտք 2 1/2 ժամ հեռու կը գտնուի Էրքէլէթ, լերան մը կուշտը շինուած, գիրքը բարձր, օդասուն, այգիներով և պարտէզներով զարդարուած լաւ գիւղ մը (Յար. Նշանեան, Մասիս, 1898, թ. 103)։

Էրքիլէթի մէջ Յոյները ունէին եկեղեցի մը, իսկ Թուրքերը մզկիթ մը որ շինուած էր Սուլթան Մուրատէն և բաղնիք և աղբիւր մեծաչէն՝ լերան վրայ։

(1) Կեսարական աղաւաղմամբ Քիչի կամ Քըչի Պիւրիւնկիւզ:



Լերան կատարը կար մենաստան մը որ Թուրքերը գրաւած էին։ Կը կոչուէր ան Խտրէլէզ (Ս. Էղիա)։ Տեղացիք անոր շինութիւնը կը վերագրէին ճինիվիզներուն, ինչ որ կարծել կու տայ թէ Խաչակրաց շրջանէն մնացած էր այս շինութիւնը։

ԱՆՑԵԱԼ.

Էրքիլէթ, ինչպէս գտնուած հնութիւններէն կը հասկցուի (տես վերը 86), հնօրեայ բնակավայր մըն էր։ Հիներու Արգէլա քաղաքն էր։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

1806ին Հ. Ղ. Ինճիճեան կ'ըսէ թէ «բնակիչք սորա խառն տունք իբր 1500, յորոց իբր 300 են Հայք»։ 1872–1873ին Թուրքերը 300 տուն էին։ 1915ին բնակչութիւնը կը բաղկանար 1000 Թուրք, 500 Յոյն և 6 Հայ տուներէ, որոնք բեկորներն էին նախկին Հայ պատկառելի թըւով բնակչութեան մը։

Այս կերպով հարիւր տարուան ընթացքին մէջ գիւղը պարպուած էր Հայերէն, որոնք առ ի անհի հետզհետէ գաղթած էին։

1886ին տակաւին 25 անուոր էին (Մասիս, թ. 3842) և 1898ին իբր 30 տուն (Մասիս, թ. 103)։

ՀԱՅԵՐԸ ԷՐՔԻԼԷԹԻ ՄԷՋ.

Հայերը որոնց թիւը 1806ին տակաւին 300 տուն էր, բաւական կանուխ հաստատուած են Էրքէլէթի մէջ։

Նոյնիսկ ԺԷ. դարէն անիկա ունէր ապահովաբար բաւական մեծ թուով Հայ բնակչութիւն, վասնզի 1661էն յետոյ կազմուած պտղիներու ցուցակի մը մէջ կարեւոր քանակով մը իր անունը նշանակուած կը տեսնենք։

Նոյնպէս Էրքիլէթ, նշանակուած է ԺԸ. դարուն կէսերը կազմուած ցուցակներուն մէջ, իբր Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ թեմ։

ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

Հայերը Էրքէլէթի մէջ ունեցած են Ս. Գէորգ անուն եկեղեցի մը, որուն գոյութիւնը պէտք է շատ հին ըլլայ, այսինքն այն շրջանէն երբ գիւղը ունէր 2–3 հարիւր տուն Հայ բնակչութիւն։ 1806ին զայն կը յիշէ Ինճիճեան (Նոյն, 317)։

Հայերը հոն ունեցած են նաև վարժարան մը Արամեան անունով, ուր 1872–73ին կը յաճախէին 50 մանչ և 8 աղջիկ։ 1886ին՝ ունէր 46 (Մասիս, թ. 3848), իսկ 1901ին՝ միայն 35 մանչ աշակերտներ։ 1885ին տարեկան ծախքը 20 ոսկի էր և 1901ին ամսական միայն 60 ղրշ.։

ԷՐՔԻԼԷԹԻ ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ.

Թէ ի՞նչ բան այդքան պատկառելի թուով Հայեր հոն համախմբած էր, անծանօթ է, սակայն անոնց ցրուումը կը թուի տնտեսական աննըպաստ պայմաններու հետեւանք։

1898ին Յար. Նշանեան (Մասիս, թ. 103) կը գրէ թէ հոն գտնուող Հայերը ապրուստի միջոցներէ զրեթէ զուրկ, խեղճ վիճակ մը ունէին։

Ունէին եկեղեցի և դպրոց, մէկ քահանայ և մէկ վարժապետ՝ զորս չէին կրնար ապրեցնել։ Երբ ճարերնին հատնէր, կը դիմէին Կեսարիա, Առաջնորդին, որ հանգանակութեամբ և ուրիշ միջոցներով բաւական գումար մը կը հայթայթէր՝ որուն տարեկան 12 ոսկի տոկոսէն,

ամսական մէկ ոսկի կը զրկէր Ինպառտ գիւղին եկեղեցիին և վարժարանին (Մասիս, 1898, Թ. 103)։

Շատոնց Թրքախօս դարձած, սակայն ինչպէս առ հասարակ են բոլոր Հայերը, հաւատաւոր, 1886ին աննշան թիւի մը իջած, տակաւին երկու քահանայ կը պահէին։

Սակայն եկաւ ատեն որ դժուարաւ և ապա ոչ իսկ մէկ՝ քահանայ կրցան պահել։

1915ին՝ աղէտին տարին քահանայ չունէին վասնզի միայն 6 տուն էին և լքուած ամէն կողմէ՝ յարած էին Բողոքականութեան։ Բողոքական հովիւ մը՝ Պատ. Սանադրուկ Շանլեան(1), Զէյթունցի երիտասարդ մը, որ ուսում ստացած էր Այնթապ և Մարաշ, հոն գացած էր և կը հովուէր այս ժողովուրդը։

ԶԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՅԵՏՈՅ.

Թափառական բեկորներ, ոչ տեղացի հաւանօրէն, ինկած էին այս կողմերը և 1926ին Կեսարիոյ առաջնորդարանին կազմած մէկ վիճակագրութեան համաձայն (1927ի Ընդ. Օրաց. Հիւան.) հոն կ'ապրէին 28 Հայեր, որոնք յետոյ այլուր պէտք է մեկնած ըլլան։

## XVIII

## ՏԱՏԱՍԸՆ

Էրքիլէթի արեւմտեան կողմը Էնկէր Կէօլի մօտ կը գտնուէր Տատասըն գիւղը որ ըստ Ինճիճեանի ունէր իբր 50 տուն բնակիչ։

Յ. Վ. Յակոբեան կ'ըսէ թէ այս գիւղը մինչև 1850ական թուականները հայախառն բնակչութիւն ունէր, սակայն այդ թուականներէ յետոյ գաղթելով ուրիշ տեղեր ցրուած են (Բիւրակն, 1899, 602)։

Ինճիճեան զարմանալի է որ 1806ին անոր հայաբնակ ըլլալը չի յիշեր։ Ուրիշներ ալ չեն յիշած։

## Բ.

## ԱՆԴՐ-ԱՐԳԵՂՈՍԵԱՆ ՇՐՋԱՆԱԿ

Կեսարիոյ անմիջական մերձաւոր շրջանակի մէջ գտնուող հայաբնակ վայրերը ներկայացնելէ յետոյ առաջնորդութեամբ հետաքրքիր տեղագրի մը՝ Եղիա Եղիազարեանի որ ինչպէս տեսնուեցաւ մեզի թողուց ճամբուն վրայ, հիմա յառենք մեր աչքերը դէպի ուրիշ կողմ, Արգեղոսի միւս կողմը, ուր ոչ նուազ հետաքրքրական վայրերու պիտի հանդիպինք։

Արգեղոս կարծես թէ սահման մըն է որ կը բաժնէ Կեսարիոյ շրջակայքը երկուքի՝ Այսր-Արգեղոսեան և Անդր-Արգեղոսեան որոնց բնակիչները կարծես թէ նկարագրով և բարքերով ալ իրարմէ կը տարբերին բաւական։

(1) Պատ. Շանլեան աքսորի տարիները բոլորելով կ'իսլամանայ և կը դառնայ Կեսարիա, ուր կ'աշխատի տեղւոյն որբանոցը։ Զինադադարէն յետոյ կը դառնայ Կ. Պոլիս և պահ մը Պայպլ Հաուզի մէջ քարոզչութիւն ընելէ յետոյ կը մեկնի Ամերիկա։



Մասնաւորապէս Անդր-Արգեղոսեան շրջանակը կը պահէ կարծես իր կապերը, բարուց և լեզուի տեսակէտով, լեռնային Կիլիկիոյ կատարներու վրայ ամրացած հայութեան, որուն հետ ամիջական շփում և յարաբերութեան մէջ եղած է, մօտաւորութեան պատճառով։

Այս շահեկան շրջանակը որ այնքան լի է Ռուբինեանց ժամանակամիջոցի յիշատակներով, հետաքրքիր ճամբորդը այցելելու համար պարտաւորուած է Կեսարիայէն մեկնելէ յետոյ Արգեղոսի կողերը քերել, անցնելու համար կռնակը։

Այդ ուղեւորութիւնը պիտի կատարենք հիմա դարձեալ առաջնորդութեամբ մեր կորուսած տեղագրին որուն թուղթերուն մէջ կը գտնեմ — դարձեալ դժբախտաբար կիսատ — մի քանի էջեր, որոնք այնքան կենդանի ու ապրող գիծերով կը նկարեն ճամբան որ կը տանի Արգեղոսի կողերուն վրայէն դէպի Անդր-Արգեղոսեան շրջանակին կեդրոնը՝ Էվէրէկ-Ֆէնէսէ։

Հետեւինք ուրեմն իր քայլերուն, լուռ և ինքնամփոփ, իբր ուխտաւորներ որոնք կ'երթան այցելելու հայրենի աւերակները։

«Կեսարիոյ հարաւային կողմէն բաժնուած է ուղիղ խճուղիի գիծ մը։ Ան արտերու մէջէն անցնելով կը մտնէ Գարա-Տէրէ կոչուած ամառանոցներուն մէջ. յետոյ հետզհետէ կը բարձրանայ օձապտոյտ շրջաններով, կը քերէ, կ'անցնի Գըզըլ-Թէփէն. կը սողոսկի, կը բարձրանայ լեռնադաշտի մը վրայ, յետոյ թեթև մը խոնարհելով կը կորսուի թրքական աղտոտ գիւղի մը մէջ որ սակայն դրախտանման վայրի մը վրայ հաստատուած է։ Հիսարճըգ գիւղն է ան։ Կ'անցնիս գիւղին մէջէն որ թարմ թրիքի հոտով լեցուն է. կը խաչատես ականակիտ գետակ մը՝ բղխած Արգեղոսի կողերէն։

«Երբ անցնիս այդ առուին ձախ ափունքը ու նայուածքդ դէպի հարաւ երկարես, կը նշմարես տեսարան մը բարբարիկ ու մեծվայելուչ։ Աջ կողմդ խճուղիին մոխրագոյն գիծը կ'երկարի դէպի հարաւ. կը մագլցի սեպ բարձունքի մը կողերն ի վեր, յետոյ կը կորսուի անոր ետին, կրկին երեւնալու համար այդ լերան ետեւի երկրորդ ու աւելի հսկայ բարձունքի կողերուն վրայ։ Ասդին առաջդ գծուած ջորեպաններու յատուկ դարաւոր ուղին զահավիժօրէն կը խոնարհի դէպի վարհուրելի հեղեղատ մը — ճշմարիտ քաոս մը ապաձեւ, թուխ ապառաժներու, ոմանք ինքնաբոյս, շատերը անշուշտ հինաւուրց ցնցումներու կամ հրաբխային յուզումներու հետեւանքով շրջապատի սարերէն փրցուած ու գլորուած։ Այդ անդնդային հեղեղատը շրջապատող լեռները սոսկալիին գեղեցկութիւնն ունին, եթէ կարելի է այսպէս ըսել, գեղեցկութիւն մը արդարեւ որ հոգիդ կը գերէ այնքան որքան վախի զգացումով սրսփացնէ միտքդ։ Կը բռնես այն ճամբան զոր մարդկային ոտքերն ակօսած են հին, հի՛ն դարերէ ի վեր, կ'անցնիս խառնիճաղանճ ժայռերու այդ անտառէն ու կը մագլցիս առաջդ բարձրացած լերան կողերը։ Ճամբան նեղ է, հազիւ երկու ոտքերուդ քովքովիութեան կրնայ բաւել։ Ձախ կողմդ անծայր պարիսպի մը երեւոյթով ցցուած է լեռը, իսկ ոտքերուդ տակ խորացած է լպրծուն գահաւանդ մը որը յատակ չունի կարծես։ Կը սոսկաս քայլափոխեր ընելու ատեն. վասնզի անզգոյշ քայլ մը առի՞ր, արդէն գլորուած ես ոչնչութեան ծոցը։ Ջորեպանդ կը նշմարէ վախի սրսփանքդ, կը յորդորէ քեզ իշուկիդ աչքէն կախուիլ ու անոր հետե-

ւիլ քայլ առ քայլ։ Անկէ զատ որպէսզի նայուածքդ չառնէ անդունդը, կը թելադրէ քեզ աչքերդ յառած պահել անբան մենտորիդ... յետոյքին։ Ու այսպէս սրտատրոփ կ՚անցնիս այդ կիրճէն, յետոյ ուրիշէ մը, աւելի վերջը երրորդէ մ՚ալ։ Վար կ՚իջնես բլուրէ մը, կը տեսնես կամարազուրկ հինաւուրց կամուրջի մը ոտքերը, մէկը՝ հաստատուած այն բլուրին կուշտին ուրկէ վար կ՚իջնես, միւսը՝ այն բլուրին կողին որը պիտի մագլցիս յետոյ։ Խորհրդաւոր տեղ մ՚է այդ տեղն ալ. չես գիտեր ինչո՞ւ, կը կարծես թէ մէն մի ժայռի ետին գազան մը, մէն մի ցցունքի ետին մարդախողող աւազակ մը դարանամուտ կը սպասեն։ Ու գոհունակութեան լայն շունչ մը կ՚առնես երբ դիմացի բլուրին կատարը գտնես ինքզինքդ։ Կը մագլցիս նոր բարձունքներ ալ, կը վայելես բազմաթիւ հովիտներու գեղածիծաղ տեսքն, անոնց յաւիտենական դալարին, քնքուշ կարկաչներուն, անթիւ ջուրի երակներուն և զեփիւռներէն ամէնէն քաղցրին հրապոյրը։ Սիրտդ ու հոգիդ խայտանքի մէջ են։ Միայն ամայութեան տրտմութիւնը կը տիրապետէ այդ տեղերը. այդ տրտմութիւնը սակայն չնաշխարհիկ հմայք մ՚ունի, չի տխրեցներ հոգիդ, ընդհակառակն, կը զուարթացնէ զայն, մառախուղի մը պէս չի ճնշեր միտքդ, ընդհակառակն կը ցրուէ աշխարհիկ հոգերու մէգերը որ անոր մէջ հաստատ բոյներ բռնելու կը ձգտէին։ Ու այս տրտունջին տեղ, զոր կեանքին տաղտուկները կը դնեն շրթունքիդ ծայրը, հոդ, այդ լռութեան ու ամայութեան հովիտներուն վրայ, սրտէդ կը բղխին, ու նայուածքէդ կը ծորին յափշտակութեան բառեր որ այնքան իմաստալից են որքան անարտաբերելի։ Արդարեւ մեծ զգացումները տակաւին լեզու և արտասանութիւն չունին։

«Այդ տեղ գլխուդ վերեւէն չեն անցնիր երգեցիկ թռչուններ. միայն ուրուրներ կը սաւառնին երբեմն ըմբշային դափրով մը վըրդովելով խորախորհուրդ լռութիւնը, կամ չահէններ նստած անմատչելի ապառաժներու քթին վրայ, կը լրտեսեն գնայքը վարերը սողացող գրաստներուն ու մարդոց։ Նաեւ ատեն ատեն ոտքերուդ տակ կատարուած սմսեղուկ խաղ մը նայուածքդ կը գրաւէ, ու կը տեսնես հարսնուկներ, որ ջորիներուն բոժոժի ձայնէն զարհուրած՝ լեզապատառ կը փախչին. երբ հասնին իրենց որջին բերանը, կը նստին ետեւի երկու ոտքերնուն վրայ, պոչերնին արդէն ծակին մէջ, մտիկ կ՚ընեն՝ հիացիկ աչքերնին բացխփելով՝ բոժոժներուն ձայնը, ջորեպաններուն սաստերը՝ ուղղուած անկարգապահ գրաստներու, նաեւ ճամբորդի մը երգը, մտիկ կ՚ընեն գլխու նշանակական ճօճումներով որ կ՚զգացնեն քեզ թէ ամայութեանց այդ փոքրիկ ու անբան բնակիչներն ալ ունին իրայատուկ սրամտութիւն մը։ Եւ ահա, «փըրթ», կ՚աներեւութանան ծակին մէջ։

«Վերջապէս ինքզինքդ կը գտնես (1) այս սարահարթին վրայ որ Թէքիր կը կոչուի (2)։ Հիանալի լեռնադաշտ մըն է ան. կարծր հերերու պէս ցից մարմանդներու միապաղաղ կանանչը ծաւալած է

(1) Երեք ժամուան ուղեւորութենէ մը յետոյ (տես Բիւզանդիոն, թ. 2553)։

(2) Վայր մը, որ Արգէոսի ուսը կրնայ սեպուիլ։ Հոս ցուրտ է, վասնզի շատ ցուրտ հով կը ղրկէ հոս Արգէոսը։



չուրջդ։ Մինչդեռ ջորեպանները դադար կու տան կենդանիներուն որ աշխարհի լաւագոյն արօտը պիտի վայելեն հոդ, և ինքզինքնուն որ քաղցրագոյն քունը սովորած են վայելել, դու, ճամբորդդ, չես խորհիր քունի վրայ. հազճեպ ճաշէ մը ետքը պտոյտ մը կ՚ընես։ Նախ այցելութիւն մը կու տաս հինաւուրց պահականոցին որ այդ ամայութեան ծոցէն բուսած է պիտի ըսէիր. քանի մը խօսք կը ծամծմես, ուղղուած կոպիտ մէկ կամ քանի մը զապթիէներու որոնք իբր թէ կը հսկեն այդ տեղ աւազակներու երթուդարձը արգիլելու, իսկ իրականին մէջ՝ հոն կը սպասեն քրիստոնեայ որսերու։ Սուրճ մը կը լփռտես, արծաթ դահեկան մը կը նետես ափսէին մէջ ու դուրս կ՚ելլես։ Հոն, պահականոցին դրան առջև, կը լսես խոխոջի մը ձայնը. կը տեսնես մօտը աղբիւր մը։ Կը մօտենաս անոր. նախնական երեւոյթ մ՚ունի. մարդը միայն քարէ ծորակ մը դրած է անոր ճամբուն վրայ։ Կը խմես ոչ թէ լիակոկորդ, այլ ումպ ումպ իր սառուցիկ ջուրէն. յետոյ կը մնաս անոր մօտ պահ մը. նայուածքդ գամուած է անոր ականակիտ հոսանքին վրայ. կարծես մագնիսացած ես։ Խորհուրդներու նոր հոսանք մը կը ծփայ մտքիդ մէջ։ Կը տարուիս մտածելու թէ այդ աղբիւրը այնքան հին է որքան այն լեռը որու խորքէն կը բղխի, որքան աշխարհը, որքան տիեզերքը. գուցէ անսկիզբ է ան. թէ իր քաղցր խոխոջը մէկն է յաւիտենութեան երգերէն, իսկ իր միապաղաղ հայելին մշտական խորհրդանշանն է մաքրութեան։ Ու կը թուի քեզ թէ մտքիդ առջեւէն չփոթ ստուերներու պէս կ՚անցնին բոլոր ճամբորդներու կարաւանները, ամայութեանց թեւաւոր կամ անթեւ բնակիչները, նոյն իսկ ազգերու հորդաները որոնք անյիշատակ դարերէ սկսելով մինչև հիմայ եկած անցած են այդ ամայքներէն. ու անցնելու ատեն իրենց ծարաւին յագուրդը գտած են յաւէրժութեան այդ աղբիւրէն։

«Կը մագլցիս իր մօտ բարձրացած բլրակը։

«Աչքերուդ առջեւն է Արգէոսի սարը իր բովանդակ մերկութեամբ. ձիւնեղէն լայնատարած հատուածները որ կը պսակեն անոր ճակատն ու կողերը, բազմամիլիոն գոհարներով հիւսուած ծովածաւալ սպիտակ տիպակներ են կարծես, որ արեւուն ճառագայթներուն տակ կը պսպղան՝ իրենց հիւլէական դերբուկներն իսկ նշմարելի ընելով։ Անոր խաչած թուքի գոյնով քարաժայռերը անսահման խոժոռութիւն մ՚ունին, Եհովայի մը խոժոռութիւնը՝ միշտ պատրաստ կարծես շանթեր որոտալու։ Դէպի հիւսիս կը դառնաս, ոտքերուդ տակ, լեռներու խաւերէն անդին, որոնք զիրար դէպի վարերը հրմշտկելու երեւոյթն ունին, Կեսարիա քաղաքը կը քնանայ՝ իբրև թէ գուբի մը յատակը. անկէ անդին կ՚երեւին հորիզոններու խաւեր որ հետզհետէ կը մարմրին, ու կը թաղուին, երկնքի մոխրագոյն կապոյտին մէջ։ Ետիդ տարածուած է ընդարձակ մշտականաչ արօտավայրը՝ կարծր ու խիտ հերերով վիթխարի լանջքի մը երեւոյթով, տեղ տեղ ակօսուած ջուրի երակներով։ Իսկ անոնցմէ անդին, լեռնակներու քղանցքը թրջելով դէպի վար կը սուրայ առու մը, իր երգին մելանուշ քաղցրութեամբը գինովցած, ու գինովցնելով նաեւ քեզ։

«Վերջապէս մեկնումի նշանը կը տրուի։

«Կը կտրենք կ՚անցնինք մօտ տասնեակ մը կիրճեր ալ։ Սկսած ենք

ցածնալու հետզհետէ. և սակայն դեռ լեռներ ու ցցունքներ գոցած են հարաւային հորիզոնը։ Վերջին կիրճէ մը կ'անցնինք և ահա մեր առաջ տարածուած կը տեսնենք ծովածաւալ տեսարան մը։ Արդէն Արգեղոսի կռնակի կողմն անցած ենք։ Անհետացած են այն զարհուրելի գահաւանդները, և թուխ ու ժանտատեսիլ ժայռերով բրրտացած իր օժանդակ բարձունքները որ Կեսարիոյ կողմէն կ'երեւնային։ Արգեղոսն այդ կողմէն ուղիղ կռնակի մը ձեւն ունի, անըսկն ի վար երկարած ձիւնեղէն հեղեղատովը։ Առաջը, ճամբորդին աջ կողմը դիրք բռնած է Կէօյ-Թէփէն, որ կը հովանաւորէ Եաղմուրլը Տէրէ կոչուած սրբազան քարայրը, ուր երաշտութեան տարիներուն հարեւան գիւղացիները ուխտի կ'երթան անձրև խնդրելու իրենց Աստուածմէն։ Ձախ կողմը կը բարձրանան Պէշ-Գարտաշ լեռները՝ փակած մարմնով ու հնգեակ գագաթով. հինգ գլուխով տիտանեան առիւծ մը ետեւի ոտքերուն վրայ նստած՝ պիտի ըսէիր։ Կ'ըսուի թէ ասոնց ամենաբարձր կատարին վրայ կանգնած էր Յուլիանոս կայսեր արձանը, և թէ զայն Թուրքերը ջարդ ու փշուր ըրած են։ Այն բարձունքէն որու վրայ կը գտնուիս, կը նշմարես անհուն տարածութիւն մը։ Անոր ծայրագոյն հարաւը, արեւմուտքէն արեւելք ուղղութեամբ, անծայրածիր ուղտերու կարաւանի մը երեւոյթով, որ չափուած դանդաղութեամբ առաջ կը խաղայ, կ'երեւի Տաւրոսի շղթան, կատարները բեկբեկ՝ երկնքի կապոյտէն։ Հարաւային արեւմտեան անկիւնը ժայռի ցցունքի պէս զանգուածի մը ուրուագիծը կը մատնէ հին Կնդոսկոյի և Նոր Գարահիսարի բերդը։ Անկից ասդին ընդարձակ ճահիճ մը կը պարզայ, Մէնտիրէմէքէի լիճը. աւելի մօտը ճոխ բուսականութեան մը մոյգ-կապարագոյն ծովը տարածուած է։ Այդ ծովին վրայ կը հսկէ Տէվէլ Տաղը. իսկ այս բարձունքին առաջը՝ գլխուն ժայռէ ապարօշ փաթթուած՝ լեռնակ մը կը հովանաւորէ հիանալի աւան մը, Էվէրէկ կամ պաշտօնական թրքերէնով Տէվէլու կոչուած գիւղաքաղաքն է ան» (Եղիազարեանի ձեռագիր)։

# XIX

# ԷՎԷՐԷԿ-ՖԷՆԷՍԷ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՊԱՏ.

Հեռուէն երկւորեակի մը տպաւորութիւնը ձգող այս զոյգ գիւղերը, թէև բալմէ մէկ-երկու վայրկեան հեռաւորութեամբ հաստատուած են և իրենց իսկութեամբ տարբեր աւաններ կրնան սեպուիլ, բայց իրականին մէջ իրարու խառնուած՝ միակ քաղաք մը կը կազմեն։

Էվէրէկ-Ֆէնէսէ իսկապէս գեղեցկադիր վայր մըն է, Կեսարիայէն 5 ժամ հեռու՝ Հարաւարեւելեան կողմը, և կը գտնուի ճիշդ Կիլիկիոյ սահմանին վրայ, Զամանթը գետով անկէ բաժնուելով։ Անիկա կը գտնուի Արգէոսի հարաւային կողմը և Տէվէլլի լերան ստորոտը, մինչև Տաւրոսեան շղթան 7 ժամ տեւողութիւն ունեցող բաց հովիտին ծայրը։ Էվէրէկ Արգէոս լերան ստորոտը ծովին մակերեսէն 2000 ոտք բարձրութեան վրայ կը գտնուի։

Մեր սքանչելի ուղեգիրը որ մեզի Կեսարիայէն մինչև Էվէրէկ բերաւ, տրամադիր է մեզի քաղաքին կամ գիւղաւանին մէջ պտտցնելու։



Անիկա կ'ըսէ. «Եթէ հոս ծնած ես, ու պարագաներու բերմունքով հեռուն ապրելու ստիպուած, ուխտի է որ կ'երթաս այդ ծնած վայրդ, կը թուի քեզ թէ այդ քաղաքը հուրիի մը գեղեցկութիւնն ունի, անմատչելի կայոյսներու խորէն քեզ ժպտող հուրիի մը. իսկ եթէ պատահական ճամբորդ մ'ես, զէթ վայրկեան մը հմայուած կը մնաս ոտքերուդ տակ պարզուած տեսարանին վեհութեան առջեւ: Առաջ կը շարժիս, վասնզի ջորեպանն ու բեռնակիր գրաստները իրենց ընթացքը չեն ուզեր հաշտեցնել զգացումներուդ հետ: Կը խոնարհիս դէպ ի այն կիրճը որ վար կը սողոսկի Կէօյ-Թէփէի եւ Պէչ-Դարտաշի մէջէն: Ճամբուդ վրայ կիրճին սկիզբ առած կէտին վրայ բարձրացած է աղբիւր մը. ոեւէ արձա-



ԷԼՊԻԶԸ ԿԱՄ ՊԼԻՍՏԸ (հեռուէն կ'երեւայ Արգէոս)

նագրութիւն չի՛ կայ վրան, բայց Հայու մը յիշատակն է եւ կը կոչուի «Հաչատուրի Չէշմէսի»։ Եթէ Էվէրէկցի ծեր ուղեկից մ'ունիս, ան պիտի ըսէր քեզ թէ քանի մը յիսնեակ տարիներ առաջ Խաչատուր Մէմիզեան անուն մէկը շինել տուած է զայն իր հազարեակ մը տաւարին ծարաւը անցնելու համար:

Կը մտնես կիրճը, որ Հարէմի Եօգուշը կ'ըսուի, վասնզի աւազակներու ամէնէն բանուկ շուկան է ան, եթէ կարելի է այսպէս ըսել: Կ'ոլորուիս ու կ'ոլորուիս Պէչ-Գարտաշի լայնարձակ քղանցքին շուրջը: Երբ ինքզինքդ գտնես վերջապէս անոր ելքին առաջ, կը տեսնես որ արդէն դիմացդ է Էվէրէկը, փառ-

թըւած՝ խաչին ծառ, կամ թրքական յորջորջումով *Հաչ-Տաղըի* քղանցքին, եւ գրեթէ խեղդուած իր անհուն կանանչներուն մէջ: Եւ յետոյ հորիզոնը ընդարձակուած է: Աջ կողմը է Արգէոսի արեւմտեան սարաշարքը, զոր մինչեւ այն ատեն չէիր տեսած. անոնց մէջէն *Ղարթըն* կոչուած ցից գագաթը նիզակի մը պէս մխուած է երկինքի կապոյտին մէջ: Ձախ կողմը ամփիթատրոնի ձեւով, իրարու վրայ շարուած են անանուն բարձունքներ:

Գրեթէ հինգ փարսախ տեւող դաշտային ճամբան անցնելէ յետոյ թեթեւ շեղում մը կ'ընես դէպի հարաւային արեւմուտք. արդէն կայերուն մէջ ես: Քանի մը հարիւր քայլափոխ եւս եւ ահա ոտքերուդ տակ կը զննես հիանալի աւազան մը. Էվէրէկի նշանաւոր *Էլպիսն* է ինչպէս կ'անուանեն զայն Թուրքերն ու Յոյները, կամ *Գլխար* ինչպէս կը կոչէ զայն Էվէրէկցի Հայը: Քաղաքին սրբազան գուռն է ան. մինչեւ քառորդ դար առաջ աւանին տղոց լուացարանը, իսկ անյիշատակ դարերէ ի վեր Էվէրէկի մեծ մասին ըմպելիքի աղբիւրն է եղած, նաեւ պարտէզներու ոռոգումի միջոցներէն մէկը ու մանաւանդ կարեւորը(1): Իր սառուցիկ, առատ ու ջինջ ջուրը կը բխի աւազանին այն մասէն որ *Խորու-ծակ* կը կոչուի եւ գրեթէ քանի ոտք բարձրութիւն ունի: Այդ տեղ կը պապղան երկու մարմարի հատորներ, գուցէ տապանաքարեր, վասնզի կ'աւանդուի թէ հոն թաղուած են անոնք որ այդ աւազանը կերտած են: Այդ քարերէն մէկուն վրայ փորագրուած է պատկերը *Էլպիսին* — աւանդութեան համեմատ Բիւզանդական կայսեր մը աղջիկը —, մէկ ձեռքին բռնած ափսէ մը, որուն վրայ դիզուած դրամներէն մաս մը վար կը թափին, իսկ միւսով դանակ մը: Գուցէ հասկնել կ'ուզէ թէ բացի դանակէն մը, բոլոր հարստութիւնը ծախսած է այս աւազանին շինութեան համար: Իսկ միւս քարը կը ներկայացնէ արքայ մը — գուցէ Էլպիսի հայրը — գահուն վրայ նստած:

Կը մտնես այգիներուն մէջտեղ բացուած ճամբան: Աւելի հեղեղատ մըն է ան քան ճամբայ մը, վասնզի Էլպիսէն արտածուած ջուրը ողողած է զայն ամբողջ լայնութեամբը: Յիսուն քայլ անդին այդ ջուրին կը միանայ ուրիշ առուի մը ջուրը: Անոր եզերքին շարուած տօսախ ու ողորկ քարի հատուածներուն վրայ Էվէրէկցի կիներ շարուած՝ կ'ընեն իրենց լուացքը: Անոնց երգի ազատ մրմունջը, լաթերը ծեծող իրենց ուժեղ ոտքերուն դաբրը, եւ իրենց փոքրիկներուն բացօթեայ հաճոյքի կանչուըռտուքը՝ խառնուած ջուրի խոխոջներուն հետ՝ արտագրաւ եռուզեռի ժխոր մը կը ստեղծեն:

Առաջ կը քալես. երկու կողմերդ այգիներու ու պարտէզներու ջրուղիներուն եզերքը շարուած կլապուչի ծառերը կը հրաւիրեն քեզ կարծես հանգչելու իրենց հովանոցաձեւ ծածքին տակ եւ քանի մը գաւաթ ննջելու: Կը քալես քանի մը հարիւր քայլ եւս. կը զննես ինքզինքդ դալարազարդ բացատանի մը մէջ. աջ կողմդ, դէպի հիւսիս ջուրի նոր գուռ մը կը հրապուրէ նայուածքդ. *Գօչ-Փունարն* է ան: Անկից անդին, միշտ դէպի հարաւ, այգիներու կանանչին մէջէն կը բարձրանայ հինաւուրց պալատի մը երեւոյթը ունեցող կիսափուլ շէնք

(1) Vital Cuinet (Ա. 321) *առանց անունը տալու կը խօսի Էլպիսի վրայ ըսելով թէ կէս ժամ հիւսիսային կողմը Էվէրէկի, կը գտնուի քառակուսի աւազան մը, եզերքը* 15 *մէթր և մէջտեղը խորունկութիւնը* 5 *մէթր, շինուած որձագրուած պատերով և աստիճաններով: Այս աւազանը, որուն կեդրոնէն կը բխի անոյշ և առատ ջուր մը, կը սնուցանէ քաղաքը և շրջակայ գիւղերը: Այս աւազանին շինութիւնը ըստ* V. Cuinet*ի կը վերագրէին Կապադովկիոյ վերջին թագաւորներուն:*



մը՝ սեմերն ու պատուհանները տակաւին կանգուն: Հին աւերակ մըն է, Բիւզանդական յիշատակ:

Անդին դէպի արեւելք *Այնիկէօ* կոչուած այգեստաններու մէջ ցցուած կ'երեւին աղիւսակերտ երկու սիւներ, անոնք կը մատնանշեն այն տեղն ուր համանուն Յունական եկեղեցին կամ վանքը կը բարձրանար ատենօք՝ աւանդութեան համեմատ: Այս երկու կմախք-կոթողները Էվէրէկի նախապաշարեալ մարդոց ու կիներուն քունը խանգարած է միշտ հարստութեան երազներով: Արդարեւ մինչեւ վերջին տարիները պակաս չէին մարդիկ, եւ մանաւորապէս երիտասարդներ որ Աւագ Ուրբաթ գիշերը կ'անցնէին այդ երկու սիւներուն մէջտեղ, վասնզի յենլով հին աւանդութեան մը, կը հաւատային թէ ամէն Աւագ Ուրբաթ գիշեր՝ միշտ տարբեր պահերու մէջ, սիւներուն մէջէն յանկարծ կափուլ մը կը բացուի ու ոսկի կը ծորի բացուած միջոցէն, եւ քանի մը վայրկեան ետքը կը գոցուի ան, եթէ անքուն հսկող մը զանոնք չի ժողվէ:

Բռնելով Գօչ-Փունարէն սկսելով դէպի հարաւ բաժնուած ճամբան, քառորդ մը չանցած ինքզինքդ կը զննես յորդաբուղխ աղբիւրի մը առջեւ. *Գապաճանի* կ'ըսուի ան. քանի մը տասնեակ քայլ անդիէն կը սկսի Էվէրէկի Այ-Կէօսթէն Յոյն թաղամասը: Հոս փողոցները բաղդատաբար լայն են, տուները օդաւէտ ու ընդարձակ, բայց սակայն աղտոտութիւն կը տիրէ ամէն կողմ: Իսկ Յոյն բնակիչները իրենց լեզուով, սովորութիւններով ու մանաւանդ տարազով չեն զանազանուիր այն Թուրք գեղջուկներէն որոնց հետ խառն կ'ապրին:

Այ-Կէօսթէնի վերջին տուներն անցնելէ յետոյ պարտէզներու մէջտեղ բացուած լայն ճամբէ մը հազիւ քանի մը հարիւր քայլ առած ես, ահա ինքզինքդ կը գըտնես Հայ-Էվէրէկի առաջին տուներուն առջեւ, հանելի արտաքինով, մաքուր ու վայելուչ ներքինով: Մանաւանդ մասնաւոր հաճոյքով կը նկատես պըտուղներով ակադձուն ծառերը, եւ ողկոյզներու տակ ծանրաբեռնուած սարբինաները, որ մէն մի տան ետեւի պարտէզները կը զարդարեն, եւ անգաղտնապահ պատուհաններու ետեւէն փողոցի անցորդներուն կը նային, շուքի մէջէն նայող գեղանի գեղջկուհիներուն հոգեհմայ նայուածքովը:

Մեր ճամբուն վրայ է Հայ գերեզմանատունը, կամ հողուին, ինչպէս կ'անուանէ զայն մասնաւոր գուրգուրանքով Էվէրէկցին: Ներս մտնենք, սիրելի ընթերցող:

Երբ անցնիս իր վանդակէն, աջ կողմդ կը տեսնես մշտաբուղխ աղբիւր մը, իր անվերջ խոխոջը մշտական օրօրն է — պիտի ըսէիր— հոն պառկած մեր սիրելի մեռելներուն: Իսկ երբ ձախդ դառնաս ու դիտես հողուիին ընդհանուր երեւոյթը, կը զգաս թէ բառին ճշմարիտ առումովը, տիպար գերեզմանատան մը մէջ ես: Արդարեւ աչքի չեն զարներ ոչ փառաւոր շիրիմներ, եւ ոչ ալ կանոնաւոր բաժանումներ. եւ ոչ ալ կը զննես հոն արուեստական բուսականութիւններու պերճանքը: Եւ սակայն իր պարզուկ ու միօրինակ տապանաքարերը, բնութեան շռայլ հոգածութեամբը բարեզարդուած բոյսերը, եւ ազատ աճումով մը բարձրացած լացս ուռիները քեզ կը ներշնչեն սրտիդ մտերմիկ ուխտատեղիի մը յուզումը, որ կը թելադրէ քեզ ծնրադրելու հոն, ոտքերուդ տակ պառկած համեստուկ մեռելներու յիշատակին առջեւ: Եթէ աղքատ ես, հոն չես ունենար երբեք այն մախանքը զոր կ'զգան մեծ քաղաքներու զրկուած քաղքենիները երբ արդիական գերեզմանատան մը մէջ կը նկատեն թաղերու ու շիրիմներու արիստոկրատիք բաժանումներ, ու տեղ տեղ փառաւոր շիրիմներ որոնք հեգնանքը կը կոթողեն, հեգնանքը՝ բաղդէ լքուածներու հողակոյտներուն հանդէպ: Եթէ հարուստ ես, հոն, Էվէրէկի այդ ռամկավարիկ գերեզմանատան մէջ, չես զգար այն արհամարհանքը զոր կը զգայիր դուրսը: Ընդհակառակն նկատելով որ

վիճակակից նախնիքներդ պարզուկ տապանագիրներու ներքեւ կը հանգչին մտերմիկ քունով, այսինքն կողք կողքի՝ անունով գործ չունեցող իրենց բախտազուրկ ընկերներուն հետ, իրերասիրութեան ջերմիկ զգացում մը հեղեղօրէն կը խուժէ սրտէդ ներս:

Հողուիին կիցն է ընդարձակ բանջարանոց մը: Անոր սեպհական գետինն է ան: Հոն կը մշակուին ընդեղէններ ու բանջարեղէններ. Ասոնք ճարակն են ողջերուն, իսկ ատոնց հասոյթը մեռեալներու տան բարեզարդութեան միջոցը: Էվէրէկցին իր գործը գիտէ, իր մեռեալները բարօրիկ պահելու ծախքը նոյն իսկ անոնց — իր մեռելներուն — ծոցէն կը հանէ, պէտի ըսէիք: Եւ յետոյ գեղեցիկ սրճարան մը բարձրացած է հողուիին կից: Հողուեպատկան հաստատութիւն մ'է այդ ալ: Անոր սալայատակ պատշգամը առաստաղուած է վարէն, Հողուիին ծոցէն բարձրացած մեծատարած որթատունկի մը եւ շարք մը ուռիներու ճիւղերով: Հոն կը դիմէ Էվէրէկի արու բնակչութիւնը իր պարապոյ ժամերուն, զուարթ ոգեւորութեամբ մը ամոքելու՝ կարծես, իր մեռելներուն յաւիտենական քունի ձանձրոյթը:

Դուրս ելլելով հողուիէն, կը մտնես գիւղին համեստուկ շուկան, վերէն ծածկուած, հետեւաբար մութ: Չի կայ եռուզեռ, չի կայ աղմուկ: Այնպէս որ սրտապէս կը լսես մուրճին ձայնը երկաթագործի մը որ հարիւր քայլ հեռուն՝ իր կրակին անկիւնը՝ երկաթ կը ծեծէ, կա՛մ քանի քայլ անդին խանութի մը մէջ եղած սակարկութիւնը, կամ շուկային միւս ծայրէն եկող ջորիի մը ոտնատրոփը, կամ վերջապէս կողմնակի փողոցի մէկ կերպասավաճառի խանութէն հասած *թավլուի* շխկոցը:

Այս շուկայէն դէպի հիւսիս բաժնուած շիտակ փողոցին ծայրն է ահա Էվէրէկի Ս. Թորոս եկեղեցին: Ընդարձակ բակի մը վրայ հաստատուած այս տաճարը, կարծեմ թէ մեծագոյնն է Հայ եկեղեցիներու մէջ: Անոր մուտքին ճիշդ դիմացը կը խոխոջի իր մշտահոս աղբիւրը: Իսկ ինքը տաճարը վեց սիւներու վրայ բարձրացած ու նորակերտ կաթողիկէով մը օծուած՝ կը կազմէ փառաւոր կոթողը Էվէրէկցիին շինարար ոգիին:

Անոր հիւսիսային արեւմտեան անկիւնը հաստատուած է մանչերու վարժարանը, իսկ հարաւային արեւելեան կողմը աղջկանցը, որ մեծ պատերազմի նախընթացներուն հիմնական նորոգութեան մը անցած էր: Վերջապէս առաջնորդարանը եւ եկեղեցական պաշտօնէից յատուկ յարկաբաժինը կցուած է եկեղեցիին հարաւային արեւելեան անկիւնին:

Դուրս կ'ելլես եկեղեցիէն տպաւորութեամբ մը որ կը զգուէ ազգային զգացումներդ, վասնզի ութ հարիւր համեմատաբար աղքատիկ ընտանիքէ բաղկացած Էվէրէկի հայ համայնքին համար շատ պատուաբեր կը գտնես իր ազգապատկան հաստատութիւնները։ Կը դառնաս փողոց մը դէպի արեւելք. յետոյ ուրիշ մը դէպի հիւսիս: Քիչ յետոյ կը մտնես երկրորդ շուկայ մը, համեմատաբար քիչ մը աւելի բանուկ, աղմկոտ. կօշկակարներու մուրճին թագթագը մեծագոյն բաժինն ունի հոն տիրող աղմուկին մէջ :

Կը սահիս վար, շուկային ճիշդ մէջտեղէն դէպի արեւելք երկարած զառիվայր փողոցը։ Յիսուն քայլ անդին ձախ թեւիդ վրայ փոքրիկ գուռ մը կը պապղայ, որու մէջ կ'աղբերանայ հինաւուրց պատի մը հիմէն ծորած ջուր մը ականակիտ. *Վանքին ջուրը* կ'ըսուի ան։

Կը շարունակես ճամբադ հեղեղատի մը վրայ ցածցող այդ փողոցէն, որ կիսաբոլոր ձեւով կը դառնայ գիւղին մէկ մասին շուրջը. յետոյ դարձեալ դէպի արեւելք կը շեղիս. կ'անցնիս *կանտարա* մը, ինչպէս կ'անուանէ Էվէրէկցին կամուրջը, նաեւ ջրաղացի մը առաջէն՝ քիչ մը կասկածանքով, վասնզի Էվէ-



րէկցիին նախապաշարումը դեւերու պատմութիւններ մը հիւսած է այդ կանտարային ու անոր վրայ նայող այդ ջրաղացին վրայ:

... Էվէրէկի շուկայէն ծայրն է կառավարական անշուք պաշտօնատունը: Այդ շէնքը սկիզբն է թրքաբնակ Էվէրէկին: Այս մնջատ թաղամասին մօտ վեց հարիւր տուները թուրանական ճաշակին ու կենցաղի պայմաններուն ողորմելութիւնը կը պատկերացնեն իսկապէս: Ցածուկիկ, կիսախարխուլ, անկանոն ու անճաշակ բաժանումներով տուներ՝ խիստ քիչ բացառութեամբ: Մզկիթ մը միայն աչքի կը զարնէ: Այս գիւղին վերջին փողոցին կցուած է *կօրել* մը, ինչպէս կ'անուանէ Էվէրէկցին թուրք գերեզմանատուները: Հազիւ հոնկէ անցած կը մտնես շէնշող ուրիշ գիւղ մը, աւանին ամէնէն բանուկ ու շքեղ մասը. զուտ հայաբնակ Ֆէնէսէն է ան: Առաջդ է իր շուկան, աւելի ընդարձակ, աւելի հարուստ իր գործառնութեանց տեսակներովն ու աւելի եռուզեռուն: Կը մտնես թաղերը: Փողոցներն աւելի ընդարձակ, իսկ տուներն աւելի գեղաշուք են: Վերջապէ՛ս Ֆէնէսէն իր եօթհարիւր տուն հայ բնակչութեամբը կը կազմէ արդարեւ ամէնէն բարգաւաճ մասը Էվէրէկի: Ունի փոքր եկեղեցի մը — Ս. Թորոս — բայց համեմատաբար գեղեցիկ վարժարան մը՝ եկեղեցիին վրայ ցածցող ցցունքի մը վրայ բարձրացած:

Եկեղեցիին մօտ է աղջկանց վարժարանը. նաեւ քանի մը տասնեակ տնուորէ բաղկացած Հայ-Բողոքականներու անշուք ժողովարանը: Իսկ Ֆէնէսէի գերեզմանատունը կը տարածուի Խաչին ծառին մօտ՝ դարատափի մը վրայ: Չունի ան ոչ մէկը այն հրապոյրներէն զոր ունի Էվէրէկի Հողուին: Արդարեւ պարապապած է. եւ սակայն ոչ մէկ ծառ կամ շէնք կը հովանաւորեն զայն: Իր ժայռոտ, կրուտ գետինը հազիւ թէ զոնջ բուսականութիւն մը կը ծածկէ գեղեցիկ եղանակին:

Այս գերեզմանատան մօտ է՝ գրեթէ հարիւր յիսուն տուն բնակչութեամբ անանուն Թուրք թաղամաս մըն ալ: Կենդանի գերեզմանատան մը երեւոյթն ունի ան: Իր բնակիչները աղքատութեան ու աղտեղութեան բոլոր արտաքին դրոշմները կը կրեն իրենց անձին վրայ: Իրենց տեսքը դիակապուտներ կը յիշեցնէ դիտողին...» (*Եղիազարեանի ձեռագիր*)։

*Մեր տեղագիրը հոս դարձեալ մեզի կը թողու առանձին վանքի իր գործը կ'ընդհատուի։*

*Բարեբախտաբար մեծ մասը իր ըսելիքներուն Էվերէկի և անոր յարակից մասերուն վրայ արդէն աւարտած է։*

*Իբր ընդհանուր նկարագիր Էվերէկ-Ֆէնէսէի ըսենք թէ ան ուներ բաւական մեծ թուով մզկիթներ որոնցմէ միայն մէկը ուներ մինարէ ըստ* Vital Cuinet*ի* (Ա. 321), *որ կ'ըսէ թէ Թուրքերը ունէին հոն նաև երեք պզտիկ դպրոցներ, Հայերը՝ երեք եկեղեցիներ (սխալ երկու պիտի ըլլայ) և երեք բարգաւաճ դպրոցներ, Յոյները եկեղեցի մը, աղօթարան մը և դպրոց մը (նոյն)։*

*ԱՆՑԵԱԼ.*

*Ինչպէս բոլոր Կեսարիոյ շրջակայքը ունին պատմական անցեալ և վաղեմի բնակավայրեր, քաղաքներ, գիւղեր և գէթ ճգնարաններ են, Էվերէկ ևս կը թուի ըլլալ տեղը քաղաքի մը կամ աւանի մը։*

*Շատ հին ժամանակներէն՝ նոյնիսկ Հաթեանց ժամանակամիջոցներէն սկսեալ, անիկա եղած է կեդրոն մը ինչպէս ցոյց կու տար Ֆրանքտինի քանդակը (տես վերը, էջ* 93)։ *Իսկ Բիւզանդական շրջանէն հոն՝ Էվերէկի տեղը կամ անոր մօտը կային հաւանօրէն քաղաք*

մը կամ աւաններ ու բերդեր, ինչպէս նաև կրօնական հաստատութիւններ, վանքեր և եկեղեցիներ, որոնց հետքերը կը մնային մինչև վերջերը, ինչպէս Էլփիսի աղբիւրը, Բիւզանդական պալատի մը աւերակները, —որոնց նկարագրութիւնը տուաւ Եղիազարեան—, նաև մի քանի բերդերու մնացորդները, ինչպէս Եվէրեկի մօտ գտնուող Այիոս Գոզմոս գիւղին մերձակայ բերդը և անոր հարաւային կողմը տարածուած ընդարձակ ձորին մէջ տեսնուած հին շէնքերու փլատակները, Կէրէմէ Ցոյն գիւղին տեղը —լեցուն քրիստոնէական յիշատակարաններով որոնք դեռ կը մնան մասամբ—, և ագուգաններու մնացորդները(1), կը հաստատեն անոր հին շէներով ու աւաններով խճողուած տեղ մը ըլլալը։ Մասնաւորապէս ասոնց մէջ ուշագրաւ էին Այ-Կոզմոս գիւղին մէջ գտնուած շինութեանց մնացորդները, և անոնց կապուած աւանդական սովորութիւնները, որոնք ցոյց կու տան թէ հին ժամանակներու մէջ հոն կը գտնուէր կարեւոր կեդրոնավայր մը։

Տէվէլու Գալէի մերձակայ ճիշդ կից լերան կողքը, պարտէզներով շրջապատուած այս գիւղին պարտէզներուն գրեթէ ճիշդ մէջտեղը կար լայն ու ընդարձակ աւազան մը, իբր թէ կառուցուած Վաղենտիանոս կայսեր օրով։ Նոյնպէս այս աւազանին կից, Կապադովկեան աշխարհին ամէնէն ժողովրդական սուրբերէն մէկուն՝ Ս. Մերկերիոսի անունով քարափոր աղօթարան մը որ իբր թէ Թէոդոս կայսեր կողմէ կառուցուած էր, Յուլիանոսէ նահատակուած Սուրբին յիշատակին համար։

Տարին անգամ մը, Ս. Մերկերիոսի տօնին, Եվէրեկէն, Ֆէնէսէէն և այլ շրջակայ հայաբնակ գիւղերէն ուխտի կ'երթային այդ թրքական գիւղը, իրենց հետ տանելով աքաղաղներ որոնք հոն տարուած Հայ քահանայի մը կողմէ օրհնուելէ յետոյ Թուրքի մը ձեռքով ամէնն ալ կը մորթէին և անոնց արիւնը կը սրսկէին քարայրին սեմին վրայ և ապա մատաղ ընելով կը բաժնէին անխտիր ներկաներուն, նաև Թուրքերուն, որոնք աղաւաղումով այդ օրը կը կոչէին Մերկրոս Կիւնի:

Եվէրեկի անմիջական շրջակայքը, գրեթէ ամէն քայլափոխի կը տեսնուէին հետքեր ու մնացորդներ շինութիւններու, որոնք մեծ մասամբ հնութենէն կու գան և կը հաստատեն թէ անիկա հին աւաններէ ի վեր շահագործուած գետին մը եղած է մարդկութեան համար։

Այսպէս Եվէրեկի գերեզմանատան պատին ճիշդ տակէն սկսեալ 20 վայրկեան լայնութեամբ մէկուկէս ժամ երկարութեամբ տարածութեան մը վրայ կը գտնուին Պարութխանէ կոչուած պարտէզները ուր դեռ կը տեսնուին հետքերը վառօդարանի մը, ինչպէս նաև կը գտնըւին կապարի կտորներ, երբ հողը քիչ մը խառնուի։

Պարութխանէի այգիները վերջանալէ յետոյ կ'սկսին Փոս Այգիներ կոչուած և գրեթէ նոյն տարածութեամբ այգիները, ուր եւս կը նըշմարուին քարակոյտեր և հողակոյտեր և երբեմն դէզեր, աւերակի հետքերով, որոնք կը յայտնեն թէ հոս ալ ժամանակին բնակավայր էր։ Հինգ վայրկեան աւելի արեւմուտք այգիները կ'առնեն Պիլէճ անունը, որ կը կարծեմ թէ պէտք է ըլլայ հին ջերմուկի մը վայրը, վասնզի հոն ալ կը տեսնուին շինութեան հետքեր, և կը գտնուին տաք

(1) Ինչպէս Տէվէլուի մօտ գտնուող Այիոս Գոզմոս բերդին ջուրը ապահովող ագուգանները որ Տէվէլուի արեւելեան կողմը մէկ ժամ հեռու գտնուող լեռնէն մինչև բերդ կ'երկարէին։



ջուրի ակեր որոնք ժամանակաւոր կերպով երեւան կու գան և կ'անհետանան։ Այս ջուրերը կը կոչուէին Հայաք Սույու։ Պիլէճի այգիներուն վերջաւորութեան՝ հարաւային կողմը աւանդաբար ցոյց կը տրուէր հետքերը Այիոս Դատիրնայ վանքին որ Կէտինէ ալ կը կոչուէր։ Հոն կան 2-3 ջուրի աւազաններ որոնք թէ՛ խաչաձև են և թէ՛ ունին քանդակուած խաչեր։ Իսկ նոյն այգիներուն արեւելեան կողմը չորս վայրկեան հեռուն՝ Ղալէ Ալթը լերան տակ կը գտնուին բազում աւերակներ։ Իսկ լերան վրայ՝ Գալէն Տէվէլու կոչուած, որ ինչպէս տեսնուեցաւ Բիւ-



ԵՎԵՐԵԿԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍԱՐԱՆԸ ԵՒ ԱՐԳԷՈՍԸ ՀԱՐԱՒԷՆ

զանդական շրջանէն մնացած բերդ մըն էր և կը գտնուէր 10 վայրկեան հեռու Այիոս Կոզմոսի իսլամացած գիւղէն։ Անկէ մէկ ժամ հեռաւորութեամբ կը գտնուէր Քէլմոխ գիւղը՝ լերան ձորին մէջ այգիներով և գեղեցկատեսիլ դիրքով, զով կլիմայով և օդասուն, որ ունէր հինէն մնացած ընդարձակ աւազան մը որ այգիները ջրելու կը ծառայէր։ Ասոր մօտ կը տեսնուէին քարայրներ և աւերակներ, որոնք կը հաստատէին թէ հին շինավայր մըն էր նաև այս վայրը։

Մերձակայ Թօմպախ գիւղին վրայ կը բարձրանայ Եամալը Տաղ կոչուած լեռ մը, որուն ճիշդ գագաթը 150 ոտք բարձրութեամբ հողակոյտ մը կայ որ կարկտանի մը նմանցնելով Թուրքերը լեռը կոչած են այս անունով։ Այս հողակոյտը՝ որ աւանդութիւնը կը կապէ առասպելական Շամիրամին, մարդկային ձեռակերտ մը ըլլալ կը թուի, մասնաւորապէս անոր համար որ տաշուած քարերով պատով մը շրջապատուած է։ Ժողովուրդը աւանդօրէն կը հաւատար թէ հոն գանձ մը թաղուած էր։ Նախապատմական ժամանակներէն մինչև մերձաւոր ժամանակները հասնող այս յիշատակարանները և շինութիւնները,

ամէնքն ալ կը հաստատեն թէ Էվէրէկ կառուցուած էր հին քաղաքի մը տեղը։

Էվէրէկցիք աւանդօրէն ալ գիտէին թէ Էվէրէկի հին տեղն էր մօտակայ Էյլիզ Էօրէն (Սատանի աւերակ) կոչուած տեղը (Էվէրէկէն դէպ ի հիւսիս 20 վայրկեան՝ Էլպիզին կամ Պըլըստին 10 վայրկեան հեռացած)։ Անոնք ցոյց կու տային նաև Էվէրէկի ձորին մէջ տեղը հին վանքի մը որ իբր ուխտատեղի կը յարգէին։

Էվէրէկի շրջանակը ԺԲ. դարուն իսլամ տիրապետութեան ենթարկուած է (տես վերը, էջ 593) Տէվ Ալի, Խըտըր Իլիաս և Շէյխ Ալի անուն զօրավարներու հրամանատարութեամբ կատարուած յարձակումով մը։ Անոնք գրաւած են Այիոս Գոզմոսի մերձակայ բերդը։

Ըստ աւանդութեան ջարդուած են տեղւոյն բնիկ քրիստոնեայ բոլոր բնակիչները կամ բռնադատուած են իսլամանալ, ինչ որ կը հաստատուէր նոյնիսկ մինչև վերջերը իրենց պահած արտասանութենէն, վասնզի Յունաց պէս Շ-երը Ս կ'արտասանէին և սակաւաթիւ ճիշդ արտասանողներն ալ վերջէն հոն գաղթող Թուրքերն էին։

Նոյն երևոյթը կը դիտուի նաև Տէվէլի Գալէի ամէնէն մօտ գըտնըւող (10 վայրկեան լերան ստորոտը) վերոյիշեալ Այիոս Կոզմոս (Այ Կէօզմէ) գիւղին մէջ ևս ուր կ'ապրէր 85 տուն զուտ իսլամ բնակչութիւն մը և կը պարապէր երկրագործութեամբ և կառապանութեամբ։

Վայրը գրաւող գլխաւոր զօրավարին անունով կոչուած է բերդը Տէվ Ալի = Տէվէլի(1) և հոն և աւելի հարաւ մէկ ժամ հեռու գտնուող Թօմպախ գիւղը(2) բնակութիւն հաստատած են իր հետեւորդները։

Տէվ Ալիի, Խըտըր Իլիասի և Շէյխ Ալիի գմբէթաչէն գերեզմանները կը հնային Տէվէլլուի գալէին մէջ, և կ'երևային Էվէրէկէն։

Թուրքերը Տէվէլուն գրաւելէն անմիջապէս յետոյ կառուցած են հոյակապ մզկիթ մը 650 տարի առաջ, ըստ իր վրայ կրած արձանագրութեան մը, որ իբր թէ տեսած է Յակոբ Արզումանեան (տես Էվէրէկի Պատմութիւնը, 1935, էջ 6)։

Սակայն ուրիշ ականատես մը կ'ըսէ թէ այս մզկիթը որ կը կոչուէր Ուլու Ճամի, շատ հնաշէն, նախկին եկեղեցի մըն էր, ինչպէս ցոյց կու տար իր ճարտարապետութիւնը, կամարաձև առաստաղը, խորանի տեղերը և այլ։ Հակառակ անոր որ Թուրքերը քրիստոնէական ամէն յիշատակ ջնջած էին սակայն փողոցի մեծ դրան վրայ գտնուած ճերմակ մարմարի մը վրայ կը տեսնուէին Յունարէն գիրերը։

Էվէրէկ երկար ատեն տեսակ մը ինքնիշխան Աղաներու տիրապետութեան ենթարկուած է, որոնք յորդւոց որդի իշխած են։ Յետոյ Գօզանեանց իշխանութեան ենթարկուած է (տես Դիւան Հայոց պատմ. Դ. էջ 730 և վերը, էջ 593) երբ Եուսուֆ Գօզան օղլու ամուսնացած է Տէվէլուի իշխողին «ճոխ ընչիւք և խելացի» այրիին հետ, և առով տիրացած է նաև այս շրջանակին։

---

(1) Տէվէլի չորս թաղեր ունէր վերջերը և 800ի չափ Թուրք բնակիչ։

(2) Թօմպախ գիւղը յետոյ ունէր 180 տուն կամ ըստ այլոց 80 տուն զուտ իսլամ բնակիչ։ Այս գիւղին խաղողը շատ յարգի էր։



ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ ԵՒ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ.

Գաւառակին պաշտօնական կոչումն էր Տէվէլլու՝ որ առած է իր անունը Էվէրէկի կից զուտ թրքաբնակ 800 տնուոր գիւղէն, որ երբեմն նստոյն էր միւտիրի մը, բայց յետոյ Էվէրէկ չեննալով դարձաւ նստոց գայմագամի մը, որով Տէվէլու կորոյս իր կարեւորութիւնը, միայն պահելով իր պաշտօնական անունը։

Էվէրէկ-Ֆէնէսէ կը բաղկանար իրարու կից չորս գիւղերէ, որոնք կը կազմէին միութիւն մը։

Այդ չորս գիւղերն են.

1. Էվէրէկ կամ Էվէրէկ Էրմէնի մօտաւորապէս 1000 տուն զուտ Հայ բնակչութեամբ (Բիւզանդիոն, թ. 2553)։ բաժնուած էր չորս թաղերու՝ Ժամու թաղ, Թագուհենց թաղ, Աղբիւրի թաղ, Գասապ Օղլենց անուններով։

2. Ֆէնէսէ կամ Ֆէնէսէ Էրմէնի, նոյնպէս զուտ Հայ 700 տուն բնակ-



ԷՎԷՐԷԿ

չութեամբ (Բիւզանդիոն, թ. 2553)։ Ֆէնէսէ բաժնուած է երկու թաղերու՝ Վերի թաղ և Վարի թաղ:

3. Թուրք գիւղ՝ զուտ թրքաբնակ 500 տուներով, և բաժնուած էր չորս թաղերու՝ որոնք կը կոչուէին Ճամի Քէպիր, Ճամի Ճէտիտ, Ապտէլպաքը և Իպրահիմ Աղա:

4. Այ-Գոստան կամ Այկօստան (աղաւաղումը Այիոս Կոստանդիանոսի) Յոյն և Թուրք 400 տուն խառն բնակչութեամբ։ Էվէրէկի Հայերը այս թաղը կը կոչէին Հոռմընոց:

Vital Cuinet (էջ 321) ընդհանուր առմամբ Էվէրէկի համար կ'ըսէ թէ ունէր 4–5 հազար բնակիչ որմէ 1800ը՝ Հայ, 200ը Յոյն, և մնացեալները Թուրք։ Այս բացատրութենէն որոշ է թէ անիկա Էվէրէկ-Ֆէնէսէն, յարակից Յոյն և Թուրք գիւղերով միասին կ'առնէ։ Սակայն ինչպէս կը տեսնուի շատ վաւերական չեն թուեր իր թիւերը, որոնք

առհասարակ խեղաթիւրուած են՝ մանաւանդ այն տեղերու մէջ ուր իսլամները կը մնան փոքրամասնութեան մէջ։ 1886ին Վտարանդին (Մասիս, թ. 3848) 800 տուն և 1895ին թղթակից մը (Հայրենիք, 1895, Հոկտ. 17, թ. 1314) 1200 տուն Հայ կը ներկայացնեն Էվէրէկ-Ֆէնէսէի բնակիչները։ Առանց վաւերական ընդունելու 1874ին տրուած այն տեղեկութիւնը (տես Փունջ, թ. 898) որ 1700 Հայ ընտանիք ցոյց կուտայ Էվէրէկ-Ֆէնէսէի բնակչութիւնը, նոյնիսկ նուազագոյն՝ 800 տունը առնելով իբր հիմ, առնուազն 3-4 հազար Հայ կրնայ ենթադրուիլ Էվէրէկ-Ֆէնէսէի բնակչութիւնը, թէև աւելի հաւանական է 6-7 հազար հաշուել։

Ըստ ոմանց ամբողջ գաւառակին բնակչութիւնն էր 50.000, որուն 20 առ հարիւրը կը կազմէր Էվէրէկ-Ֆէնէսէի և շրջակայ գիւղերու Հայ բնակչութիւնը (Ս. Գեղամ, Ժամանակ, 1927)։

ՀԱՅԵՐԸ ԷՎԷՐԷԿԻ ՄԷՋ.

Էվէրէկի մէջ այնպէս կը կարծեն թէ Տէվ Ալիի կողմէ այս շրջանակը գրաւուելէն բաւական տարիներ յետոյ արհեստաւոր Հայեր այդ կողմերը գալով յարաբերութեան մտած են տիրող Աղաներուն հետ և ի վերջոյ անոնց մօտը՝ կէս ժամ հեռուն ձորին մէջ, ուր ջուր մը կար, բնակութիւն հաստատած են (Յ. Արզումանեան, Էվէրէկի Պատմ. 8)։

Այս առաջին բնակիչները հազիւ տասնեակ մը ընտանիքներ էին որոնք ըստ աւանդութեան մը, որ Էվէրէկցիէ մը լսած եմ, եկած էին Ատըեմանէն (= Հիւսնի Մանսուր) կամ Աչտիի կողմերէն և հետզհետէ բազմացած են, և ձորին դէպ ի հիւսիսը ինկող բլուրին վրայէն, բլուրին ետեւի կողմը յառաջացած են, ըստ Յակոբ Արզումանեանի (նոյն, էջ 8) որ կը կարծէ թէ Էվէրէկ սկսած է ընդարձակուիլ Պարսկաստանէն, Թէհրանէն, Թոմարզայէն, Կեսարիայէն և ուրիշ շատ տեղերէ հետզհետէ գաղթող Հայերով (նոյն, էջ 9)։

Հայոց Էվէրէկ հաստատուելու ժամանակին մասին ոչ մէկ տեղեկութիւն կայ, բայց կը խորհիմ թէ Էվէրէկի Հայոց այս կողմերը հաստատութիւնը հաւանօրէն պէտք է պատահած ըլլայ Ալլայէտտին Արթինա պէյի և իր յաջորդներուն իշխանութեան շրջանին (1326–1381) որ ինչպէս բացատրուած է (տես 580) խաղաղութեան և բարգաւաճութեան ժամանակամիջոց մը եղած է։ Հետեւաբար ԺԴ. դարուն եկած են հաւանօրէն։ Կը մղուիմ այսպէս խորհիլ վասնզի իսլամական յիշատակարաններու նշանաւոր ուսումնասիրող Van Berchem և Խալիլ Էտհէմ՝ Արթինա պէյի կը վերագրեն՝ մերձակայ քաղաքի մը, այսինքն Տէվէլու Գարա Հիսարի (պէտք չէ շփոթել Էվէրէկի մերձակայ Տէվէլուի հետ) մէջ, կառուցումը մզկիթի մը (որ իր անունով արձանագրութիւն մը ունէր), և այդ շրջաններու մէջ՝ ուրիշ յիշատակարաններու։

Հայերը հաւանօրէն իբր արհեստաւորներ աշխատած են այս շինութիւններուն մէջ և հաստատուած՝ այս շրջանակին մէջ, թերեւս ոչ ուղղակի արդի տեղը, այլ մէկ կամ աւելի ուրիշ տեղեր, և ի վերջոյ եկած հաստատուած են Էվէրէկ, ոչ սակայն ուշ քան ԺԶ. դար։

Այս ենթադրութիւնը կերպով մը կը հաստատէ սա հետաքրքրական իրողութիւնը որ Էվէրէկէն դէպ ի հարաւ-արեւելք չորս ժամ հեռու Տաւրոսեան լեռնաշղթայի մօտ գտնուող Ղազի Քէօյ անուն



Թուրք գիւղ մը կայ 150 տուն զուտ Թուրք բնակչութեամբ, որ ունի շատ այգիներ՝ որոնք կ'արտադրեն Էվէրէկի շրջակայքի ամէնէն ընտիր խաղողները, և շատ ընտիր գինիի մը պատրաստութեան կը ծառայեն։ Այս գիւղին, — որուն ժողովուրդը իր վայրենի և բարբարոս բնաւորութեամբ մեծ հռչակ շահած էր — այգիներուն կէսէն աւելին կը պատկանէին Էվէրէկի Հայերուն։

Արդեօք Էվէրէկցիք իրենց սկզբնական բնակավայրէն ելլելէ յետոյ հոն կայք մը ունեցա՞ծ չեն և անկէ յետոյ արդեօք շարժա՞ծ չեն դէպ ի Արգէոս։

Իբր փաստ Էվէրէկի Հայոց սկզբնական բնակավայրին Ատըեմանը ըլլալուն կ'ըսեն թէ Ատըեմանի մէջ խօսուած հայերէնին և Էվէրէկի բարբառին միջեւ մեծ նմանութիւններ կան և գրեթէ նոյն բարբառն են։

Ֆէնէսէցիները, իբր թէ Էվէրէկի հիմնարկութենէն 200 տարի յետոյ Գոնիայի կողմէն գաղթած են (Յ. Արզումանեան, Էվէրէկի Պատմ., էջ 10)։

Արդ, դիտելի իրողութիւն մըն է, որ Գոնիայի Հայերը (տես վերը, էջ 534) կը համարուէին Մարաշի և Սամոսատի շրջանակէն փոխադրուած՝ Սելջուկեանց շրջանին։

Ատըեման շատ հեռու չէր, ուստի թէ՛ Էվէրէկցիք և թէ՛ Ֆէնէսէցիք միեւնոյն նախնական բնակավայրէն թերեւս զանազան տեղափոխութիւններով եկած իրար գտած են։ Այս իրողութիւնը մասամբ կը հաստատէ իրենց լեզուն, որ գրեթէ նոյն բարբառն է, սա տարբերութեամբ որ Էվէրէկցիք աւելի անխառն և մաքուր հայերէն կը խօսին քան թէ Ֆէնէսէցիք որոնց լեզուին մէջ Թուրքերէն բառերը աւելի առատ են, թերեւս արդիւնք իրենց Գոնիա, քանի մը հարիւր տարիներու բնակութեան։

Էվէրէկցիք իրենց ծագումի մասին աւանդութիւններ ունին և մինչեւ Գագիկ Բագրատունիի և Ռուբինեանց հիմնադիրին ժամանակները կը հանեն։

Աւանդաբար կը պատմուէր թէ Գագիկ Բ.ի ժամանակակից Կեսարիոյ Մարկոս Մետրոպոլիտին իր շունին Արմէն անունը տուած ըլլալուն համար Էվէրէկի Հայ աղջկունք պար բռնելով կ'երգեն եղեր ողբաձայն թէ Հայերը այնքան նուաստացան որ շուները Արմէն կոչուեցան։

Ռուբէն իշխան ալ իբր թէ Ֆէքէի մէջ կը պարտուի Յոյներէն և շղթայի զարնուելով Կիպրոս կ'աքսորուի։

Աւանդաբար կը պատմուի թէ Ռուբէն չափազանց գէր էր։ Գերութեան մէջ այնքան կը նիհարնայ որ իր դաստակներուն անցուած շղթաները կ'իյնան և ինքն Կիպրոսէն խոյս տալով կուգայ Տաւրոսի կողմերը և նաև Էվէրէկ ուր կը լսէ Հայ աղջիկներու երգը և իբր թէ անկէ տեղեկանալով Գագիկի եղերական մահուան, վրէժ կը լուծէ Յոյներէն և կը հիմնէ իր պզտիկ իշխանութիւնը, որ կորիզը կ'ըլլայ Ռուբինեանց հարստութեան։

Էվէրէկցիք այս զրոյցը կրնան իրենց նախկին բնակավայրէն բերած ըլլալ, վասնզի բոլոր պատմական տուեալները Էվէրէկի հիմնարկութիւնը ԺԴ. կամ շատ շատ ԺԳ. դարէն առաջ չեն ցոյց տար։

Էվէրէկի և Ֆէնէսէի նոյնաժամանակ հիմնուած չըլլալուն գըլ-

խաւոր փաստն է երկու գիւղերուն —որոնք գրեթէ բնակակիցներ էին— միջև տիրող հակառակութիւնը, որ բնիկի և եկւորի սովորական կռիւն է որ շատ մը տեղերու մէջ տեսնուած է։

Էվէրէկցիք իրենց գիւղին տեղը հոն ընտրած են կ'ըսեն, վասնզի շատ մը յարմարութիւններ կը ներկայացնէր։ Ձորի մէջ պատսպարուած էր, ունէր ջուր մը որ կ'անցնէր ձորին մէջէն և ունէր երկու կողմերը մէկ ժամ երկայնութեամբ ամուր պատեր, որոնք կ'արգիլէին զայն հեղեղներու ատեն շրջակայքը ողողելէ։ Նոյնպէս ձորին հարաւային կողմը, վարի ծայրը կար յունական աւերակ վանք մը՝ իբր թէ Տէվ Ալիէն քանդուած, որուն ագուգանները —որոնք հեռուէն ջուր կը բերէին— կը մնային և իրենց խմելու ջուրը կ'ապահովէին։ Ուստի այդ ջուրին եզերքը և ձորին մէջ կը հաստատեն իրենց գիւղը և նկատելով որ շուրջ բոլորը շատ մը աւերակներ կան, իրենց գիւղը կը կոչեն Աւերակ որ աղաւաղուելով կը դառնայ Էվէրէկ (1)։

Գրաւոր յիշատակարաններ շատ ուշ կը յիշեն այս գիւղը։ Սիմէոն դպիր Լեհացի 1618ին Արգէոսի նկարագրութիւնը ընելէ յետոյ շատ նկատելի է որ կ'ըսէ «Եւ յայնկոյս լերինն սորոսն ՏԷՎԷԼՈՒ խասապան է, որ են անդ կայ բազում հայ, եկեղեցի եւ քահանայք» (ՀԱ. 1935, 91)։

Ինչպէս կը տեսնուի ԺԷ. դարուն սկիզբը տակաւին ո՛չ Էվէրէկ անունը եւ ո՛չ Ֆէնէսէն կը գործածուէր և Տէվէլու կը ճանչցուէր։

Յաջորդ դարուն Սիմէոն կաթ. Երեւանցի իր Ջամբռին մէջ, ինչպէս նաև իր դպիրը՝ Երեմիա Օչականցի՝ իր նուիրակութեանց ցուցակին մէջ, Տէվէլուն կը յիշատակեն և կ'անգիտանան Էվէրէկը։ Միայն Երեմիա՝ կը յիշատակէ Ֆէնէսէն։ Հետեւաբար իրաւունք ունենալ կը կարծեմ մտածելու թէ Էվէրէկի յիշատակութեան զանցառութիւնը արդիւնք չէր անոր գոյութիւն չունենալուն, այլ իբր ենթակայ Տէվէլուի, այն անունով ճանչցուած ըլլալուն և տակաւին ստացած չըլլալուն այն կարեւորութիւնը որ յետոյ ունեցաւ։

Իսկ թէ բուն Տէվէլուի մէջ Հայեր ապրա՞ծ են, տարակուսելի է, թէև 1865ին Կ. Պոլսոյ Պատրիարքարանին կողմէ կազմուած ցուցակի մը մէջ Էվէրէկ և Ֆէնէսէ առանձին առանձին յիշուելէ զատ, նշանակուած է նաեւ Տէվէլուի անունը, որով կը հաստատուի թէ հոն ալ սակաւաթիւ Հայեր կ'ապրէին հաւանօրէն Էվէրէկէն հոն փոխադրուած։

ԴԱՒԱՆԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ.

Էվէրէկ-Ֆէնէսէ յարանուանական տեսակէտով ալ կը ներկայացնէր բաժանումներ։

Բողոքականութիւնը և կաթոլիկութիւնը հոն մուտք գործած էին, սակայն չէին կրցած արմատանալ (Բիւզանդիոն, թ. 2553)։

Բողոքականութիւնը մասնաւորապէս բաւական տարածուած էր վերջերը։ 1886ին հազիւ 28 տուն էր, սակայն յետոյ բաւական շատցաւ։ Ունէին ժողովարան, դպրոց և մնայուն քարոզիչ կամ պատուելի։ Իսկ կաթոլիկութիւնը հոն մուտք գործած է կամ աւելի ճիշդ է ըսել թէ կարճ ատեն մը կաթոլիկութեան միտումներ տեսնուած են

(1) Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, 1899, էջ 602) շատ հաւանական չ'ընդունիր այս տեսութիւնը։



և նոյնիսկ մասնաւոր առաքելութիւն մը հաստատուած է, սակայն չէ կրցած ապրիլ և խափանուած է։

ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ.

Հայերը քաղաքին երկու մասերուն մէջ ալ ունէին մէկ մէկ եկեղեցի, երկուքն ալ Ս. Թորոս անունով։

Էվէրէկի Ս. Թորոսը նախ շատ խեղճ շինութիւն մը եղած է։ 1886ին Վտարանդին կ'ըսէ թէ ան գրեթէ աւերակ, խալխլած և տեղ տեղ փլած շէնք մըն էր։ Աղքատ այլ սակայն եկեղեցասէր Էվէրէկցիք, յետոյ զայն վերաշինած են։ Նոր կառուցուած եկեղեցին չափազանց մեծածախս շինութիւն մըն էր, որուն կառուցումը տարիներ տեւած և հազարաւոր ոսկիներ արժած է։ Այս պատճառով նոյնիսկ կրթական գործը վնասուած է։

1895ին Էվէրէկցիք իրենց եկեղեցիի ծածկը վար կ'առնեն և հոյակապ գմբէթ մը բարձրացնել կ'աշխատին (Հայրենիք, 1895, թ. 1314) և 1030 ոսկիէն աւելի կը ծախսեն, հակառակ անոր որ ժողովուրդէն շատեր ձրի կ'աշխատին անոր շինութեան, քանի մը ժամ հեռու լեռնէ մը քարէ ահագին սիւներ բերելով՝ սայլակներու վրայ դրած և իրենք լծուած քաշելով։ Իսկ Ֆէնէսէցի կիները կրած են աւազը այն ճամբուն ուսկից կը բերուէին այդ սիւները։ Նոյնպէս Էվէրէկցի և Ֆէնէսէցի կիները սափորներով ջուր կը փութացնէին սիւները փոխադրողներուն (Նոյն)։

Գալով Ֆէնէսէի Ս Թորոսին, ան ալ գեղեցիկ դիրքով և չափաւոր մեծութեամբ գմբեթաւոր շէնք մըն էր։ Ընտիր յիշատակներ կը գտնուէին հոն, արծաթեայ գեղեցիկ տապանակ մը կայ կաթուղիկէներով զարդարուած՝ կէս կանգունէն աւելի երկարութեամբ, զոր Պոլսաբնակ Ֆէնէսէցի ազգայիններ նուիրած էին, գեղեցիկ սկիհի ծածկոց մը արծաթեայ և ոսկեթել բանուածքով, իւղաբերից Աւետարան մը բոլորագրով ընտիր ձեռագիր՝ գունաւոր պատկերներով և արծաթապատ պատկերներով և կողքով, ինըսուն երեք(1) տարուան (Հայրենիք, 1895, թ. 1314)։

ՀԱՅ ԴՊՐՈՑՆԵՐ.

Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ կրթական շարժումը դժբախտաբար յապաղած է և անոնք շատ ուշ արթնցած են այս տեսակէտով, սակայն պէտք է ըսել միևնոյն ատեն թէ եռանդուն կերպով աշխատած են և իրենց մէջ նշանակելի է ուսումնասիրութիւնը և գրեթէ Կեսարիոյ մտաւորականութեան մեծամասնութիւնը այս շրջանէն հասած են, միայն թէ ո՛չ թէ տեղւոյն վրայ այլ այլուր։

Նախ քան 1850ական թուականները դպրոցական հաստատութեան մը հետքը չկայ։ Այդ թուականներէն կ'սկսի դպրոցի մը կազմակերպութիւնը, որ հետզհետէ աւելի կը կանոնաւորուի։

1864ին Էվէրէկի մէջ կը կազմուի Դպրոցասէր Ընկերութիւն մը որ 30000 ղրուշ կը հաւաքէ դպրոցին համար։

Էվէրէկի մէջ 1872-73ին Հայերը ունէին երկու վարժարան, 300

(1) Հայրենիք, 1895, թ. 1314, 53 տարի նշանակած էր, 93ի վերածեցի վասնզի 40 տարի եւս անցած էր այն թուականէն ցայսօր։

մանչ աշակերտներով, և տարեկան 5640 ղրշ. ծախքով, որ կը հայթայթէր Հայկեան Ընկերութիւնը:

Էվէրէկի մէջ յետոյ կառուցուած վարժարանը կոչուեցաւ Ս. Մեսրոպեան որ ունէր 1901ին 440 աշակերտ (290 մանչ և 150 աղջիկ) և 6 ուսուցիչ և 3 ուսուցչուհի։ Դպրոցին ամսական ծախքն էր 1000 ղրշ. որուն 550 ղրշ.ը եկեղեցին կը հայթայթէր, 100 ղրշ.ը թոշակներէ կը գոյանար և 350 ղրշ.ը կը հոգար Մեսրոպեան Ընկերութիւնը որ կազմուած էր վարժարանին նպաստելու համար և ունէր նաև Ընթերցարան մը որուն հասոյթը նաև վարժարանին յատկացուած էր։

Ֆէնէսէ եւս 1872-1873ին ունէր երկու անանուն վարժարան 257 մանչ և 100 աղջիկ աշակերտներով։ Տարեկան ծախքն էր 4500 ղրշ. որ կը հայթայթուէր նուիրատուութիւններով (Համար. Կեդր. Վարչ., 1872-1873, Դաւառ. Վիճ., էջ 60)։ 1886ին դպրոցը ունէր 270 աշակերտ (Մասիս, թ. 3848) և 150 ոսկի տարեկան ծախք։

1901ին Ֆէնէսէի վարժարանը կը կոչուէր Ռուբինեան, և ունէր 420 աշակերտներ (290 մանչ և 130 աղջիկ) 5 ուսուցիչով և 2 ուսուցչուհիով։ Ամսական ծախքն էր 1000 ղրշ. որուն կէսը կու տար եկեղեցւոյ Անտուկը և 500 ղրշ. Կ. Պոլսոյ մէջ Ֆէնէսէցիներէն կազմուած Ռուբինեան Ընկերութիւնը որ 1880ական թուականներուն սկիզբը կազմըւած էր և երբեմն ունէր նաև ընթերցարան մը որուն հասոյթը եւ յատկացուած էր դպրոցին (Մասիս, թ. 3848)։

Էվէրէկի մէջ Բողոքականներն ալ ունէին 1886ին վարժարան մը, սոսկ աղջիկներու համար, 60 աշակերտուհիներով (Մասիս, թ. 3848)

ԷՎԷՐԷԿ-ՖԷՆԷՍԷՑԻՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

Էվէրէկ-Ֆէնէսէի Հայ բնակչութիւնը գեղեցիկ համախմբութիւն մըն էր ամփոփուած տեսակ մը կղզիացման մէջ և չարքաշ աշխատութեամբ և ճիգերով առաջդիմած։

Անոնք որքան ալ իրենց բնակավայրը ընդարձակուած և հետըզհետէ քաղաքի վերածուած, սակայն միշտ մնացած են շինական՝ իրենց մտայնութեամբ և միշտ ինքզինքնին Կեսարիոյ ենթակայ գիւղ մը համարած են և գիւղական բարքերը և սովորութիւնները մինչև վերջը պահած են, ապրելով պարզ կեանք մը, մասնաւորապէս զբաղելով երկրագործութեամբ, որուն համար նպաստաւոր գետին կ'ընծայէր տեղւոյն դաշտային դիրքը և հողին բարեբերութիւնը։

Էվէրէկ-Ֆէնէսէի անդրանիկ բնակիչները, արհեստաւորներ էին, և մինչեւ վերջը իրենց մէկ կարեւոր մասը մնաց արհեստաւոր։ Էվէրէկի մեծ փողոցի շուկան ունէր 150 խանութ, գրեթէ ամէնքն ալ կօշկակար. արհեստ՝ որուն մասնաւոր նախասիրութիւնը ունեցած են կարծես Էվէրէկցիք, գրեթէ իրենց բոլոր գաղթած տեղերուն մէջն ալ։

Ասկէ զատ անոնք ունեցած են բազմաթիւ արհեստաւորներ. մասնաւորապէս վարպետ երկաթագործներ ունէին Ֆէնէսէցիք։Անոնք մնալով հանդերձ արհեստաւորներ, օգտուած են միջավայրին ընծայած առաւելութիւններէն, իրենց գիւղը շրջապատող սքանչելի հովիտներէն, և միեւնոյն ատեն սկսած են պարապիլ երկրագործութեամբ և հասուցած են լայնածաւալ այգիներ և պարտէզներ, որոնք կ'ապահովէին իրենց ապրուստը։

Անոնք կ'օգտագործէին իրենց լեռները և հովիտները ծածկող



արմատ գազերը որոնց արտադրած մածուցիկ հիւթը՝ գազի խէժը (քիթրէ) նիւթ մը կը կազմէր վաճառականութեան և կ'ապահովէր երբեմն տարեկան 100,000 ոսկիի հասոյթ մը։ Անոնք կը հասցնէին նաև Ճէնրի որ երբեմն բաւական կլորիկ գումար մը կ'ապահովէր։ Երբ անիկա իր արժէքը կորսնցուց ժողովուրդը սկսաւ չերամաբուծութեամբ զբաղիլ։

Արհեստներու և երկրագործական աշխատանքներու հետ առեւտրական գործունէութիւն ալ ունեցած են։ Էվէրէկի միւս շուկան —Եօղուրթ Պազար կոչուած— ունէր 150 խանութ, առաւելապէս կերպասեղէնի և նպարեղէնի, ամէնքն ալ Հայոց ձեռքը։ Նոյնն էր վիճակը Ֆէնէսէի շուկային մէջ։

Ուղղակի եւրոպական հրապարակներու հետ յարաբերութեան մէջ եղող վաճառականներ կային, որոնք բաւական ընդարձակ գործառնութիւններ կ'ընէին։

Նոյնպէս արջառներու վաճառականութիւն (ճէլէպճութիւն) կ'ընէին Հայերը՝ Թուրքերու ընկերակցութեամբ։

Արտածութեան նիւթերն էին քիթրէն և բուրդը։

Կը պատրաստուէր բաւական լաւ կաշի։ Էվէրէկի մէջ ալ գորգագործութեան մըլում տրուած էր։

Վերջին ատենները՝ ճարտարարուեստական ձեռնարկներ ալ եղան։ Յակոբ Զաքմաքլեան Էվէրէկի մէջ հիմնեց գուլպայի գործարան մը որ օրական 100 զոյգ գուլպայ կ'արտադրէր։ Զաքմաքլեան ծրագրած էր մետաքսի մանարան մըն ալ հիմնել սակայն Ընդհ. պատերազմը արգելք եղաւ իր մտադրութեան և իր գուլպայի գործարանն ալ կառավարութենէն գրաւուեցաւ։

Ապրուստը աժան ըլլալով, չարքաշ, գործունեայ և աշխատասէր Էվէրէկցիք, իրենց ծախքը դիւրաւ կը հանէին, իրենց հողային արդիւնաբերութիւններով և ձեռքի աշխատութիւններով և քիչ շատ տանելի կեանք մը ունէին, տնտեսապէս։ Գրեթէ ամէն մարդ ունէր իր սեփական տունը, այգին և պարտէզը։

Սակայն ինչպէս տեսնուած ընդհանուր երեւոյթ մըն էր գաւառներու, մասնաւորապէս Կեսարիոյ և շրջակայից համար, հակառակ անոր որ անոնք պարզ կեանքի մը բոլոր առաւելութիւնները ունէին, անձուկ կը գտնէին իրեց շրջանակը և կը նետուէին ուրիշ քաղաքներ, բախտ փորձելու համար։

Տեսակ մը նախաձեռնութիւն ու յանդգնութիւն, որ արդարեւ ոմանց օգտակար եղած է, իսկ շատերու համար միայն պանդխտութեան տուայտանքները արժած է, առանց առաւելութիւն մը բերելու։ Ամէն տարի կանոնաւորապէս 30-40 հոգի կը գաղթէին Կ. Պոլիս և այլուր։

Հինուց ի վեր իրենց պանդխտութեան գլխաւոր վայր էր Կ. Պոլիս, ուր իրենց գլխաւոր զբաղումը եղած է կօշկակարութիւնը։

Մասնաւորապէս Կ. Պոլսոյ մէջ իրենց կեդրոնավայրը եղած է Զաթալ խան, որուն հարիւրաւոր սենեակները, ամէնքն ալ Էվէրէկ-Ֆէնէսէցի աշխատաւորներով լեցուն, տեսակ մը կօշիկի գործարան կը կազմէր։

Գաղթային այս հոսանքը յետոյ աւելի լայն հորիզոն ընդգրկեց և

*մինչեւ Ամերիկա տարածուեցան Էվէրէկ-Ֆէնէսէցի բաւական մեծ թիւով գաղթականներ։*

*Էվէրէկցիք և Ֆէնէսէցիք կը խօսէին հայերէն մը որ քաւական աղաւաղեալ էր, բայց կը պարունակէր միեւնոյն ատեն գրաբարի հետքեր և իր պատկերոտ ասութիւններով մասնայատուկ նկարագիր մը ունէր ըստ Ս. Գեղամի (*Ժամանակ*, նոյն)։*

*Հայ լեզուի պահպանութիւնը՝ հակառակ Թուրքերու հետ իրենց խառն բնակչութեան գնահատելի իրողութիւն մըն է, սակայն հակառակ անոր որ պահած են իրենց լեզուն, կենցաղի և վարքուբարքի մէջ չափազանց ազդուած ըլլալ կը թուին Թուրք բարքերէ ու սովորութիւններէ, մասնաւորապէս ամուսնական կեանքի մասին իրենց ըմբռնումներով։ Գաւառներու մէջ հայկական բարքերու համար խորթ նկատուած են Բ. ամուսնութիւնները որոնք շատ երիտասարդ այրիներու մէջ միայն կը տեսնուէին, ան ալ այրի ընդ այրւոյ ամուսնութիւններով, և այն պարագաներուն երբ զաւակներ չկան։*

*Իսկ Էվէրէկի մէջ կարծես թէ նուիրագործուած է իսլամական* Նիքահի *տակ մեռնելու պարտականութիւնը, այր և կին առանց ամօթխածութեան նոյնիսկ շատ հասուն տարիքի մէջ վերամուսնանալ երկրորդ և նոյնիսկ երրորդ անգամ չեն վարանիր, երբ ունին նոյնիսկ հասուն զաւակներ։ Էվէրէկի մէջ շատ քիչ է տուն ուր խորթ զաւակներ, հօրուներ ու մօրուներ գտնուած չըլլան։ Անկէ առաջ եկած է բարքերու աղճատում մը որ հայկական չէ ապահովաբար։*

*Իրենց առտնին ու հասարակական կեանքին մէջ նոյնպէս ուշագրաւ է այն խուլ հակառակութիւնը որ Էվէրէկցիք ու Ֆէնէսէցիք իրարու հանդէպ ունին։*

*Ֆէնէսցիք՝ ինքզինքնին աւելի լուրջ մարդոց տեղ դրած՝ Էվէրէկցինները թեթեւ և սնապարծ մարդոց տեղ կը դնէին, իսկ Էվէրէկցիք՝ Ֆէնէսցինները կը համարէին երկչոտ ու կնամարդի և փոխադարձաբար այս վերջինները զանոնք կը համարէին «նետող-բռնողներ», ինչպէս կ'ըսեն ժողովրդական բացատրութեամբ։ Եւ չէին ուզեր իրարու առաջ խոնարհիլ և իրար կ'արհամարհէին։ Երեւակայեցէք որ երբ Էվէրէկցիք իրենց եկեղեցին կը շինէին այնքան մեծ զոհողութիւններով և տարիներու աշխատութեամբ, չզիջան դրամ ուզել Ֆէնէսցիներէն և Ֆէնէսէցիք չուզեցին դրամ տալ մինչեւ որ Էվէրէկցիք չդիմէին և այսպէս տարիներով ո՛չ եկեղեցիին շինութիւնը լրացաւ և ո՛չ ալ դպրոցը շարունակուեցաւ։*

*Էվէրէկ չզիջաւ Ֆէնէսէի օգնութիւնը խնդրելու։*

*Արհամարհանքը որ Էվէրէկցիք և Ֆէնէսէցիք իրարու նկատմամբ ունէին հասած էր ծիծաղելի համեմատութիւններու և կ'ըսուի թէ Էվէրէկցիք «ջնջոցը» կը կոչէին «Ֆէնէսէցի» և Ֆէնէսէցիք նոյնը կը կոչէին «Էվէրէկցի», առով կարծես գոհացում տալով իրենց քէնին և ատելութեան, որ կը տածէին իրարու հանդէպ։ Այս հակառակութիւնը որ իրարու նկատմամբ ունէին նոյնիսկ լրագիրներու էջերուն վրայ իր արձագանգը գտած է, վասնզի Էվէրէկցին իր թաղամասը և Ֆէնէսէցին իրը փառաբանած է։*

*Այսպէս թղթակից մը (տես* Բիւզանդիոն, *թ. 2553) կը գրէր թէ Ֆէնէսէն կը նկատեն Էվէրէկի պատիւն ու ամէնէն զարգացեալ թաղը, թէ Ֆէնէսէի բնակիչները ամէնքն ալ ըստ բաւականի բարձր դասակարգի կը պատկանէին։ Մրայն մոռցած է ըսել թէ ի՞նչով կը տարբերէին Էվէրէկցիներէն՝ «բարձր» դասակարգի մը պատկանելու համար։*

*Միակ ճշմարտութիւնը սա է Ֆէնէսէցիք աւելի կրթասէր և ուսումնասէր եղած են և աւելի զարկ տուած են իրենց դպրոցին։*

*Այս հակառակութիւնը, ինչպէս ըսի, հաւանօրէն արդիւնք էր բնիկի և եկւորի բնական մրցակցութեան և այն տարբերութիւններուն որ հակառակ նոյն ծագումը ունենալուն անոնք ունէին, նոյն տեղէն տարբեր ուղղութեամբ և թափառումներով հոս հասած ըլլալով։*

*Եղիազարեան որ Էվէրէկցի մըն է խօսելով այս տարբերութիւններուն վրայ կ'ըսէ թէ* «Էվէրէկցին տաք գլուխ է, Ֆէնէսէցին ծանրագլուխ. Էվէրէկցին հանոյքի մարդ է, կ'արհամարհէ դրամը, երբ խնդիրը հանոյքը գոհացնելու մէջ է: Կը ճանչնամ Էվէրէկցի մը որ իր սովորական սափրիչին ածիլուելու համար Կ. Պոլիսէն Իզմիր գացած է, իմանալով որ ան նշանածը տեսնելու գացեր է հոն: Ֆէնէսէցին գործի մարդ է եւ հանոյքի մէջ ամէնէն ետ մնացողն է:

Եւ յետոյ աւելի վստահելի է Ֆէնէսէցին, քան Էվէրէկցին, ինչպէս Կեսարացին նուազ վստահելի է քան Էվէրէկցին:

Էվէրէկցին պոռոտախօս է, կը խօսի այնպէս ինչպէս ուրիշ տեղացիներ կը խօսին կռուելու ատեն, բայց աւելի յանդուգն է քան Կեսարիոյ եւ շրջակայքի ոեւէ Հայ համայնքը:

Ֆէնէսէցին երկչոտ է. զգուշաւոր է լեզուով, նաեւ վարուելակերպով: Էվէրէկցին ծոյլ է թէ՛ առեւտրական գործի մէջ եւ թէ՛ տնային կեանքին մէջ. գործը յաճախ կը թողու օդին սիրոյն, իսկ տան ու այգիին գործերը իր կնոջ վրայ բեռցուցած է: Ֆէնէսէցին շատ այգի ու պարտէզ չունի, ատոր համար կիներն աւելի թեթեւ եւ մարդիկ նուազ հանոյասէր են: Էվէրէկցին եռանդոտ է ազգային գործերու մէջ. մերթ կը քննադատէ, մերթ կը վիճաբանի: Ազգ. Սահմանադրութեան հռչակումէն առաջ Կեսարիոյ կուսակալներու ատեն ատեն հանած վլվլուկները, պատրիարքարանի ըրած խուժումները, պատմութիւնը արձանագրած է: Էվէրէկցիներն են անոնք:

Էվէրէկցիին մէջ հաստատամտութիւնը մինչեւ կամակորութիւն կ'երթայ ... իր հաւատքներուն վրայ հաստատ, կարծիքներուն մէջ անդրդուելի, գործի մէջ հաստատակամ է, Ֆէնէսէցիին կամքը ճկուն է, կը խուսափի վէճերէ. ուրիշի կարծիքներուն կամ պնդումներուն առաջ ճարպիկօրէն տեղի կու տայ: Էվէրէկցին աւելի զգայնական է, Ֆէնէսէցին աւելի գործնական. ինչ որ յաճախ Էվէրէկցին չէ կրցած ընել զգացումով, Ֆէնէսէցին կրցած է ընել զայն հաշիւով: Էվէրէկցիները իրարու շատ աւելի կապուած են քան Կեսարիոյ եւ շրջակայքի ոեւէ համայնք եւ սակայն ոչ մէկ տեղացի այնքան յամառ է իր քէնի մէջ որքան Էվէրէկցին»:

*ԱՐԵԱՆ ՏՈՒՐՔ.*

*Էվէրէկ-Ֆէնէսէ որ մասնակցութիւն ունեցած էր 1893ի շարժման մէջ, 1895ին աչնան հայկական ջարդերուն տուաւ իր զոհերը, վասնզի Թուրք հրոսակներ մինչեւ ակռանին զինուած յարձակեցան Էվէրէկի վրայ, կրակեցին, թալլեցին, առեւանգեցին և սպանեցին։*

*Եւ անգէն Էվէրէկ-Ֆէնէսէցին մոլթոտուեցաւ քաղաքին ներսը և դուրսը։ Այս հարուածը սակայն շուտով դարմանեց Էվէրէկցին անմիջապէս վերակազմելով իր կեանքը և տնտեսութիւնը։ Մանաւանդ*

1908ին Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ, անոնք շուտով ինքզինքնին գտան, և հաւանօրէն շատ մեծ զարգացման և բարօրութեան պիտի հասնէին եթէ 1915ի աղէտը, այս շէն ու բարգաւաճ գիւղաքաղաքը — ուր Հայուն ու Թուրքին նկարագիրներուն տարբերութիւնը այնքան աղաղակող գիծերով երեւան կու գար — աւերակոյտի չվերածէր, անորակելի խժդժութեամբ։

Անոր շէնշող և աշխոյժ Հայ բնակչութիւնը ամբողջովին զոհ եղաւ «գայմագամ» Սալիհ Զէքիի վայրագութեանց. այս արիւնաքամ հրէշին որ Ինճէ Սուի հայութիւնն ալ կոտորեց և որ յետոյ Տէր-Զօրի կառավարիչ կարգուելով՝ իր բոլոր պաշտօնակիցներուն և համհարզներուն պակաս թողուցածը լրացուց մէկ անգամէն, 1916ի ամառը, Տէր-Զօրի ջարդը կազմակերպելով։

Կեսարիոյ և շրջակայից Հայերու դժբախտութեան առաջին ազդանըշանը Էվէրէկի մէջ արձագանգեց չարաղէտ արկածով մը։

Տեղահանութենէն շատ առաջ, 11 Փետր.(1) 1915ին Ամերիկայէն դեռ նոր Էվէրէկ եկած և ոչ մէկ կուսակցութեան պատկանող Գէորգ Բօշայեան(2) անուն Հայ մը իր տան մէջ պօմպա լեցնել փորձած ատեն, անզգուշութեան հետեւանօք պօմպան կը պայթի և խեղճ երիտասարդը կը զոհուի։

Այս պայթումին առթիւ կը ձերբակալուին մի քանի անձեր, սակայն գայմագամը այդ դէպքին համար ամբողջ ժողովուրդը պատասխանատու չի բռներ։

Կեսարիոյ միւթէսարըֆը՝ տեսնելով Էվէրէկի գայմագամին այս բարեացակամութիւնը անմիջապէս պաշտօնանկ կ՚ընէ զայն և անոր տեղը պաշտօնի կը կոչէ Սալիհ Զէքին, որ պաշտօնի անցնելէ անմիջապէս յետոյ, իր առաջին գործը կ՚ընէ վերարծարծել պայթումի միջադէպը և բանտերը լեցնել։ Ժանտարմա Քօմանտանի Լութֆիի գլխաւորութեամբ Էվէրէկ ղրկուած քննիչ մարմինին Կեսարիա դառնալէն յետոյ Էվէրէկէն Հայ կալանաւորներու խումբեր հետիոտն ու իրարու շղթայուած, կը բերուէին Կեսարիա, իրենց առջեւէն էշերու վրայ բեռցուած ունենալով Էվէրէկի Հայերու քովէն գտնուած ամէն տեսակ զէնքեր։

Չարչարանքի չտոկալով Էվէրէկցի մի քանի Հայեր խոստովանած էին զէնքերուն Հնչակեան կուսակցութեան կողմէ հայթայթուած ըլլալը և ասիկա բաւական եղած էր որպէսզի հրդեհը վարակէր նաև Կեսարիան (Հայկ Ղազերեան, Սեւ Օրեր. Կեսարիոյ Նախճիրները. Էջեր Օրագրէս. ԼԻԲԱՆԱՆ, Է. տարի, 23 Մայիս 1931, Թ. 560)։

Էվէրէկի արու բնակչութեան մեծ մասը կը բանտարկուի և առարկայ կ՚ըլլայ աներեւակայելի չարչարանքներու։ Զէքի՝ անձամբ զանոնք ծեծի տակ խոշտանգելէ և չարչարելէ զատ, արճաապ (Բէզապ) թափել կու տայ անոնց ոտքերուն վրայ և յետոյ հրաշէկ երկաթներով կ՚այրէ թէ ոտքերնին և թէ կուրծքերնին։

---

(1) Վարդանանց տօնին օրը, ինչպէս Հայկ Ղազերեան յատկապէս կը շեշտէ։ Արդարև այդ տօնը նոյն տարին կը զուգադիպէր ըստ Նոր տոմարի 11 Փետրուարին, հետեւաբար 29 Փետր.ը որ նշանակած է Գ. Արիս Գալֆայեան սխալ է։

(2) Գ. Արիս Գալֆայեան «Տէֆճեան» կը նշանակէ։



Ասկէ զատ Էվէրէկէն աքսորել կու տայ 14 հոգինոց խումբ մը, որուն ինք անձամբ կ՚ընկերանայ, և ճամբան հրացանի բռնել կու տայ ամբողջ խումբը և ինքը կը զուարճանայ (Սեպուհ Ակունի, Միլիոն մը Հայերու ջարդի ամբողջական պատմութիւն, 192–193)։

Թէոդիկ՝ իր Գողգոթա Թրքահայ Հոգեւորականութեան եւ իր Հօտին. Աղէտալի 1915 տարին գործին մէջ (ձեռագիր) կը յիշատակէ այս 14ը սակայն կ՚ըսէ թէ անոնք Կեսարիա տարուեցան և հետեւեալ օրը կախուեցան(1)։

Ուրիշներ ալ տուայտեցան բանտերու մէջ և ճաշակեցին անխուսափելի բռնամահը, մինչ ժողովուրդը կը շարունակէր իր գողգոթան՝ մինչև Միջագետքի անապատները 15 Օգոստոս 1915ին տեղահան ըլլալով։

1915 Փետրուարի վերջերը կը ձերբակալուի նաև Կարապետ Աքհ. Մելէքեան(2) և կը փոխադրուի Կեսարիա ուր կ՚ենթարկուի բանտի չարչարանքներու, կարծես վարձատրելու համար խեղճ քահանային քսանեւհինգամեայ անձանձրոյթ տքնութիւնը Թուրք լեզուն սորվեցնելու համար իր հայրենակիցներուն և նորահաս սերունդին։

Կեսարիոյ պատերազմական ատեանը անպարտ կ՚արձակէ զայն սակայն կ՚աքսորեն դարձեալ Տէր-Զօր և կ՚սպանեն ճամբան։ Իրեն հետ մարտիրոսական պսակը ստացաւ իր պաշտօնակիցը և հայրենակիցը Յակոբ քհ. Տէր-Յարութիւնեան (ծնեալ 1846), որ միանգամայն իր օծակիցը եղած էր։ Իսկ այս երկուքին բախտակից եղաւ Մխիթար քհնյ. Թամըզեան(3)։

Նոյնպէս տարագրութեան ճամբուն վրայ անհետացան Ֆէնէսէի երեք քահանաներէն երկուքը։ Ասոնցմէ առաջինը՝ Եղիշէ քհն. Աս-

---

(1) Ուսուցիչ Արիս Գալֆայեան և Մելոս, երկուքն ալ ականատեսներ, կը յիշեն թէ 24 Յուլիս 1915ին Կեսարիոյ մէջ կախաղան հանուած են 8 անձեր Էվէրէկ-Ֆէնէսէցի, որոնք էին Ֆէնէսէցի Յարութիւն Տայեան, Գրիգոր Ղազարուկեան, Աստուր Մինասեան և Էվէրէկցի Գրիգոր Մանճեան կամ Մումճիհանեան, Յարութիւն Քէօլէեան, Կարապետ Ադողարեան, Յակոբ Զպուքճեան, Մանուկ Պըչագճեան։ Թէոդիկ իր գործին մէջ ասոնցմէ զատ կը յիշէ Գուզեան, Վարժապետեան, Պահանճեան, Դարագըզեան, Չէչէնեան և Շէմսեան անունները։

(2) Աշխարհական անունով Սարգիս, ծնած 1859ին Էվէրէկ։ Իր ուսումը առած է Կ. Պոլիս Կէտիկ-փաշա։ 25 տարի իբր տաճկարան դասախօսած է Էվէրէկի Մեսրոպեան վարժարանին մէջ։ 1886ին ձեռնադրուած քահանայ Կեսարիոյ առաջնորդ Եղիա եպ. Դերձակեանէ։ 1911ին Տէվէլուի Մէճլիսի Իտարէի կողմէ Էնկիւրիւի նահանգային ընդհանուր ժողովի անդամ ընտրուած է, իր ձեռնահասութեան պատճառով անշուշտ։

(3) Ծնած 1846ին Էվէրէկ. աշխարհական անունով Յակոբ։ Ուսումն առած է տեղւոյն վրայ։ 1901ին ձեռնադրուած Մովսէս եպ. Կէօմրիւքճեանէ Հայմանայի (Էնկիւրի) եկեղեցւոյն վրայ, ուրկէ փոխադրուած էր Էվէրէկ իր ծննդավայրը։

տուածատուրեան(1) որ զէնք պահած ըլլալու ամբաստանութեամբ՝ ատեն մը կը մնայ Կեսարիոյ բանտը, յետոյ թէև անպարտ կ'արձակուի պատերազմական Ատեանէն սակայն կրկին ձերբակալուելով՝ 1915 Յուլիսի վերջերը կ'աքսորուի դէպի Տէր-Զօր, և ճամբան չտոկալով անվերջ զրկանքներու կը վախճանի Բաքքայի մէջ։

Երկրորդը՝ Ղեւոնդ քհ. Տայեան(2) իր զաւակներուն՝ Յարութիւնի և Տիգրանի մասին եղած ամբաստանութեան պատճառով ինքն ալ կը ձերբակալուի և աննկարագրելի խոշտանգումներու կ'ենթարկուի հրէշ Ջէքիի կողմէ։ Մասամբ հազիւ կ'ապաքինի ծեծին տակ ստացած ծանր վէրքերէն և դեռ պատերազմական Ատեան չներկայացած՝ կ'աւանդէ հոգին, բանտին մէջ խճողումի և ապականութեան հետեւանօք համաճարակի երեւոյթին առած ժանտախտէն վարակուելով։ Մարմինը — որպէս նախատինք քրիստոնէութեան — կը ձգուի բանտի աղբանոցը, թշնամիներու ծաղրին և ծանականաց առարկայ։

Իսկ երրորդը՝ Տ. Բենիամին քհ. Վանեբեան(3) իր հօտին հետ կը տարագրուի և բարեբախտ զուգադիպութեամբ մը կ'իյնայ Դամասկոսի շրջակայքը և 26 Օգոստ. 1916ի իսլամացման խիստ հրամանին չհամակերպելով կրնայ ինքզինքն ազատել մինչև Զինադադար։ Պահ մը Երուսաղէմ և մի քանի տարի Գահիրէ պաշտօնավարելէ յետոյ հիմա կը քահանայագործէ Կիպրոս։

Ս. Թորոս եկեղեցւոյն խաչերը, ոսկեայ և արծաթէ անօթները կողոպտած է Աղազատէ Մահմուտ (Թէօդիկ, Գողգոթա)։

ԶԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՅԵՏՈՅ.

Զինադադարէն յետոյ բաւական թուով Հայեր, կրցան դառնալ Էվէրէկ-Ֆէնէսէ, վասնզի յայնկոյս Արգէոսի հայաբնակ գիւղօրէքը բարեբախտ գտնուեցան հակառակ չարաչար տառապելնուն, ապահով ճամբէ գաղթահանուելով և գէթ մասամբ ողջ մնալով։ 1919ին Դեկտեմբերին, Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան թեմական այցելութեան կ'երթայ Էվէրէկ-Ֆէնէսէ, ուր կը գտնէ խանդավառ ընդունելութիւն մը։ Զինքը կ'առաջնորդեն եկեղեցի ուր կը քարոզէ և կ'օրհնէ ժողովուրդը, և յաջորդ օրը կը պատարագէ խուռն բազմութեան մը ներկայութեան և կը քարոզէ։

Առաջ. փոխանորդը կը կազմէ երկու թաղերուն համար Միացեալ Թաղ. Խորհուրդ մը, և հոգեւորապէս մխիթարելով, 11 օրերու ընթացքին ժողովուրդը, կը մեկնի։ Քիչ յետոյ հոն ղրկեց քահանայագործութեան համար Զամախլուի Ներսէս քհ. Ներսէսեանը, որ 1921ին

(1) Ծնած 1852ին Ֆէնէսէ, աշխարհական անունը Գաբրիէլ Տրեխեան։ 1888ին քահանայ ձեռնադրուած Սանտալճեան եպ.է։

(2) Ծնած է 1848ին Ֆէնէսէ. աշխարհական անունով Կարապետ։ Ուսած ծննդավայրին Ռուբինեան դպրոցը, յետոյ Ղալաթիոյ Կեդրոնականը։ 1895ին կը ձեռնադրուի Սանտալճեան եպ.էն։ Երբեմն հոգաբարձու գիւղին կրթարանին։

(3) Ծնած 30 Հոկտ. 1866ին, Ֆէնէսէ, աշխարհական անունով Համբարձում, և իր ուսումը հոն առած, քահանայ ձեռնադրուած է Տրդատ եպ. Պալեանէ 20 Մայիս 1907ին։



վախճանեցաւ Էվէրէկի մէջ։ Ասոր յաջորդեցին նախ Տ. Գրիգոր քհ. Պետրոսեանը (Արմաշցի) և ապա Տ. Եղիշէ քհ. Թագաւորեանը, ձեռնադրուած 1932 Յունուարին։

1924ին կային Էվէրէկ 973 և Ֆէնէսէ 375 Հայեր և իրենց տրամադրութեան տակ ունէին իրենց թաղերուն եկեղեցիները և դպրոցները, որոնք բացուած էին և կը գործածուէին։ Ունէին նաև երկու առանձին Թաղ. խորհուրդներ։



ԳՐԻԳՈՐ ՔՀ. ՊԵՏՐՈՍԵԱՆ
(Արմաշցի)

1925ին կառավարութիւնը գրաւեց Իտարէի Խուսուսիէի անունով Էվէրէկի եկեղեցին և դպրոցը, որով երկու թաղերը միացուեցան։

1927ին Հայոց թիւը կը պակսի 1200էն 900ի իջնալով, որոնք Ֆէնէսէի եկեղեցիին և դպրոցին շէնքերը կ'օգտագործէին։ Դպրոցին տնօրէնն է Ս. Գեղամ։ Ամսական ծախքն էր 140 թրքական թղթադրամ որ Կ. Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանը կը հոգար։

1928ին կառավարութիւնը գրաւեց նաև Ֆէնէսէի եկեղեցին և և վարժարանը, որոնք 7-8 ամիսներ փակ մնալէ յետոյ վերադարձուեցան, սակայն դպրոցը կարելի չեղաւ շարունակել։

Այդ թուականին Էվէրէկի մէջ կ'ապրէին՝

106 այր 147 կին, 49 մանչ, 58 աղջիկ = 360 հոգի

Ֆէնէսէի մէջ 205 այր 228 կին, 54 մանչ, 65 աղջիկ = 552 հոգի

Այս Հայերը մեծ մասամբ արհեստաւոր և երկրագործ, կ'ապրին գէշ աղէկ։

## XX

# ԻԼԻՊԷ ԿԱՄ ԻԼԻՊԷՍ

ՎԱՅՐ.

Էվէրէկի նկարագրութեան մէջ մեր տեղագիրը՝ Եղիազարեան նկարագրած էր կանտարա (=կամուրջ) մը և ջրաղաց մը։

Հոնկէ անիկա մեզի կ'առաջնորդէ, հազիւ 10 վայրկեան տեւող ճամբով մը անզգալիօրէն բարձրացնելով լեռան մը քղանցքէն գիւղակի մը առաջը՝ այդ լեռան կողին հաստատուած (նոյնի ձեռագիր)։

«Գիւղը՝ Իլիպէ, իսկ լեռը՝ Խաչին Ծառ կամ ցանկական յորջորջումով Խաչ Տաղը կը կոչուի»:

Խաչին Լեռը Էվէրէկի արեւելեան, և Ֆէնէսէի հարաւային կողմը քառորդ ժամ հեռու բլուր մըն է բաւական բարձր, և կը ներկայացնէ Էվէրէկի և Ֆէնէսէի հայութեան «Նուիրական լեռը», որուն գագաթի հիւսիսային և հարաւային կողմերը մէկ մէկ հսկայ ժայռեր ցցուած են։

Ամէն տարի Աստուածածնայ տօնի շաբաթ երեկոյ այդ երկու ժայռերու վրայ մեծ հրավառութիւն կ'ըլլար։ Տղաք 2-3 օր առաջ կը պատրաստուէին, փայտեր և այլ այրելի նիւթեր վառելու համար.

երկար ցցի մը ծայրը կազ կոչուած տեսակ մը փշալից և գիւրավառ խոտը կամ ուրիշ նիւթեր վառած՝ ցատկրտելով կ'աղաղակէին ան. դադար. «Խաչին լեռը կը վառի» (Բնաշխ. Բառ.)։ Թուրքերը ևս կը մասնակցէին այս հնաւանդ սովորութեան և այդ օրը «Զըրա եանըը» կը կոչէին (Յ. Արզումանեան, Էկէրէկի Պատմ., էջ 13)։ Այս հնօրեայ սովորութիւնը կու գար ամենահին ժամանակներէ և գրեթէ ամէն գիւղի մէջ այս կամ այոր նման սովորութիւն մը գոյութիւն ունէր։

ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ.

Այս լերան կողին հաստատուած Իլիջէ զուտ հայկական գիւղ մըն է մօտ երեք քառորդ(1) դար առաջ Հաճընցի գաղթականներու ձեռքով կառուցուած։

ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

«Գիւղին յիսնեակ մը (2) տուներ վայելուչ ճակատնին բաց օդին, իսկ թիկունքնին լեռան քարայրներուն տուած են: Զառիվերի մը վրայ շինուած էր Ս. Աստուածածինը, գեղեցիկ կաթողիկէով մը պսակուած գերազանցապէս Հայ-գեղջկական պարզութեան հրապոյրն ունի: Իր ընդարձակ բակին մէջ ոչ մէկ բուսականութիւն, ինչ որ կը յայտնէ որոշապէս թէ Իլիջեցին հողի հետ խաղալ չի սիրեր:

«Այդ հանոյասեսիլ եկեղեցին հրաշագործի համբաւ մը շինած է ոչ թէ միայն Հայ եւ Յոյն, այլ նաեւ շրջակայ Թուրք համայնքութեանց մէջ եւ իր այն՝ ջուրը որ կը կայլակէ եկեղեցիին շրջափակին մէկ անկիւնէն. կենաց ջուր կ'անուանեն Հայերը, իսկ հայաթ սույու՝ Թուրքերը» (Եղիազարեանի ձեռագիր):

Այս եկեղեցին նախապէս փլմափոր էր և չափազանց անշուք։ Էվէրէկցի Կարապետ եպ. Գալֆայեան, Սեբաստիոյ առաջնորդը, երբ անգամ մը կ'այցելէ Էվէրէկ, եկեղեցին փորել կու տայ և կը խորունկցնէ և կանգնել կու տայ մէջտեղը գմբեթ մը և բակը պատով մը շրջապատել և դպրոցի համար 2-3 սենեակներ շինել կու տայ (Յ. Արզումանեան, Նոյն էջ 14–15)։ Առհասարակ տղաքը կու գային Էվէրէկի դպրոցը, սակայն երբեմն շինող եպիսկոպոսին անունով՝ Կարապետեան վարժարան մը ունեցած են, ուր կը յաճախէին միայն 20 մանչեր։ Ունէր մէկ վարժապետ ընդամէնը ամսական 50 ղրշ. ծախքով որ եկեղեցիին սնտուկը կը հոգար (1901ի վիճակագիր)։

Մնայուն քահանայ ալ երբեմն ունեցած են և երբեմն ո՛չ։ Էվէրէկ-Ֆէնէսէէն ղրկուած քահանաներ պարբերաբար կը հովուէին այս ժողովուրդը:

ԿԵԱՆՔ ՈՒ ԿԵՆՑԱՂ.

Իլիջէ որ Հաճնոյ գաղութ էր պահած էր անոր տարօրինակ և անհասկնալի բարբառը անաղարտ։ Իրենք արհեստով կլայագործ լին։ Ամառը գիւղերը կ'երթային կ'աշխատէին և ձմեռը հանգիստ կ'ընէին։ Աշխատասէր ու ժիր մարդիկ էին։

---

(1) Ըստ Յակոբ Արզումանեանի (Էվէրէկի Պատմ., էջ 14) 150 տարի առաջ, սակայն չեմ կարծեր որ ճիշդ ըլլայ։

(2) Հայրենիք, 1895, թ. 1314, 60 տուն կը նշանակէ, իսկ Յ. Արզումանեան 100 տուն (Նոյն, էջ 14)։



1915Ի ԱՂԷՏԸ.

Իլիջեցիք ևս տեղահան եղան և ինչպէս առհասարակ բոլոր Անդր-Արգէոսեան շրջանի Հայերը, նոյնպէս նաև ասոնց 95 առ հարիւրը կորաւ գաղթի, քաղցի և սպանդի հետեւանօք։

# XXI

# ԶՕՄԱԳԼԸ ԿԱՄ ԶՕՄԱԽԼՈՒ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ՇՐՋԱՆԱԿ.

Զօմագլը կամ Զօմախլու՝ Էվէրէկէն մէկուկէս ժամ հեռու Արգէոսի փէշին փռուած, արեւոտ և ծիծղուն երկինքով գիւղ մըն է։

Անիկա կը գտնուի Արգէոսի հարաւ-արեւելքը, Արգէոսէն երկու ժամ հեռաւորութեամբ երկու կարմիր բլրակներու կողերուն վրայ տարածուած։

Իր սահմաններն էին արեւմուտքէն Պէյճէմ լեռները, Հարամի դաշտը և Խօրասան ձորը, արեւելքէն Ինճէսուլի արօտավայրերը և Վայվաղան լեռը, հարաւէն Սուլթան Տաղըն, հիւսիսէն Արգէոսն և Թէքիրի սարահարթը (տես Արիս Տ. Կ. Գալֆայեան, Զօմախլու, Նիւ-Եօրք, 1930, էջ 11)։

ԱՆՑԵԱԼ.

Զօմախլուի զանազան հնութիւնները ցոյց կու տան որ անիկա Հայերէն բնակուելէ առաջ հնօրեայ չէն մըն էր։

Ուշագրաւ էին ստորերկրեայ բնակավայրերը, ինէրը, որոնցմէ ոմանք թերեւս բնական փապարներ են, իսկ շատերը Արգէոսի քիրէմներուն մէջ մարդոց ձեռքով փորուած քարայրներ։

Ասոնք նմանօրինակ և իրերահաղորդ տուներու ցանց մը կը ներկայացնեն։ «Եր մտնես ցածլիկ ծակէ մը ներս եւ տասը մէթրի չափ յափսիթեռս գնացքէ մը ետք կը հանդիպիս բնակավայրի մուտքին, ուր նեղքի մը մէջ տնկուած է երկանաքարէ միակտուր խոշոր մղակ մը, զոր թրխազ կը կոչէինք եւ որ կափարիչն էր ինին: Ինչպէս եւ ո՞ւրկից կրցեր են այդ հսկայ քարը հոդ զետեղել: Թրխազէն ներս կը պարզուի դահլիճ մը, բարձր ձեղունով եւ շուրջը քարէ մսուրներով եզերուած, յետոյ քալէ՛ որքան որ կ'ուզես, դարձ-դարձիկ անցքեր, անվերջ վերելք ու վայրէջք, աջ ու ձախ ընդելուզուած սենեակներ միշտ մսուրներով, որոնք այդ խաւարի բնակչութեան արկղիկները ըլլալու են կա՛մ օրոցքները: Ճամբուդ կը հանդիպիս խորունկ ջրհորներու մեղրահամ ջուրով լիքը:

Փապուղիի վերելքները երբեմն կը մօտենան հողի մակերեսին, ուրկէ բացուած են փոքրիկ լուսամուտներ, որոնք ըլլալու են հաղորդակցութեան միակ կապերը լոյս-աշխարհի հետ: Անցի՛ր լեռնէ լեռ, միշտ հողի տակէն եւ դեռ կտրելիք ճամբայ կ'ունենաս: Ինէրը, այս խաւարի ցանցերը, պատրանքը կու տան փարաւոնեան լաբիւրինթոսներուն, որոնք անշուշտ քարի եւ երկաթի դարու մարդոց բնակավայրն են եղած» (Արիս Տ. Կ. Գալֆայեան, Նոյն, էջ 11-12)։

Ասոնցմէ զատ «գիւղամէջը եւ շուրջը կային բազմաթիւ կիսափուլ եւ կիսաքանդ աւերակներ, սէպ ծածկուած հողի շերտերով: Այս հոյակապ աւերակներէն մին էր Հօղուլին, երկու թաղերու միջեւ գիւղի զերեզմանատունը, որ արքայաշուք հսկայ ժայռերով կառուցուած աղօթարանի մը աւերակը ըլլալու

երեւոյթն ունէր, որուն բարձրադիր կամարներն ու ամրակուռ պատերը անջինջ կոթողներն էին հիներու հերգիւլեան զօրութեան:

Շրջակայ լեռներու վրայի փլատակներու մէջ նշանաւոր էր *Կէմէրէի* եկեղեցին: Հրաշագործ սրբավայր մը, անով, որ դրան մուտքին մօտական կը հնչէր աներեւոյթ զանգակ մը: Այս զարմանալի ձայնը, թերեւս օդի հոսանքէն յառաջացած հնչիւն մըն էր, սակայն իր խորհրդաւորութիւնը կրցեր էր պահել զինք քանդումներէ: Պատերու փորագրութիւնները, խաչերու եւ սուրբերու նկարները Խաչակրաց յիշատակութիւններ ըլլալ կը կարծուին:

Զանգակի այդ առեղծուածը պատկառանք ներշնչած էր նաեւ Իսլամ տարրին: Ամուլ գեղջկուհիներ ուխտի կուգային հոն եւ ժամերով իրենց արցունքոտ աչքերը սեւեռելով սեւ նկարներուն, կը խառնէին իրենց հոգեկան մրմունջները այդ աներեւոյթ զանգակի թրթռուն ալիքներուն, արգասաւորութիւն կը հայցէին *անծանօթ* Աստուծմէն:

Նշանաւոր ուխտավայր մ'ալ ունէինք Պէյնէմի մօտիկ *Ատաճայի* կատարը, ուր կը հանգչէր *Խըտըր-Էլիասի* հոգին: Երաշտ տարիներ Էվէրէկի ու Ֆէնէսէի ժողովուրդը՝ Թուրք եւ Հայ կրօնաւորներու առաջնորդութեամբ հոն կը բարձրանար «պահօք եւ աղօթիւք» անձրեւ կը հայցէր Ս. Եղիայէն եւ յաճախ ձեռնունայն չէր դառնար:

Նմանօրինակ սրբավայր մ'էր նաեւ Վայվադանի ստորոտը գտնուող աղօթարանը, որ Թուրքերը կը կոչէին *Ալա-Քէլիսիա*: Արդեօք յունարէն *Այա-Քիլիսէ՞*:

Բերդերու հնութիւններ կային *Ղալէ*ն եւ *Սուլթան Տաղը*ն: Այս վերջինը աւելի ընդարձակ սարահարթի մը վրայ կառուցուած ընդարձակ ամրոց մըն էր, որուն արեւմուտքի ձորամէջի Թանթանն եւս ուշագրաւ հնութիւն մ'էր: Ձորամէջ երկու կողմէն դէմ դիմի բարձր խարիսխի վրայ վիմափոր երկոտասնեակ մը սենեակներ կային: Հոն ապաստանող խումբ մը, վեր բարձրանալէ ետքը եթէ ելնարանը վերցնէր կ'ունենար անառիկ մարտկոց մը:

Ղալէ բլրակի բերդը, թէպէտ փոքրիկ, բայց աւելի հին կը թուի: Մշակելու ժամանակ հոնկէ հանուած են ջարդուած արձանիկներ, բրուտեղէններ եւ զանազան ձեւերով դրամներ: Կը կարծուէր թէ այդ բլուրի գագաթը թաղուած կը մնար *Կարսէտասի մը հոգին*: Հոն, կատարին վրայ կար որոշ հողամաս մը որ տարուէ տարի կը չոքէր, թերեւս հողին տակ կիսափուլ շէնքի մը փլուզումէն յառաջացող երեւոյթ մ'էր:

Բերդին իրական գանձն էր *Փունար-Պաշին*, վճիտ, սառնորակ եւ անզուգական ակ մը: Ամրան գեղեցիկ զբօսավայր մը հաճոյքի մարդոց, ուր *բախտաւոր*ներ կ'ըմբոշխնէին Կեսարիոյ համբաւաւոր ապուխտը, Էվէրէկի աննման օդին եւ Գարահիսարի մշկահոտ *ղալտալըուն*, ծիրանը:

Աղբիւրը որ կը բխէր ընտիր կոփածոյ աւազանէ մը, որ խրուած էր լերան արեւելեան կուշտին, կը պատմուէր թէ լերան տակ աւազանի ետեւէն ունէր առատ ջուր որ փողրակներով փոխադրուեր էր Ֆէնէսէ, այս լեռ ու սար ճեղքելով՝ երկու-երեք ժամուայ տեղ ջուր փոխադրելու հսկայ աշխատանքը կատարողն եղած է իբր թէ *Էլպիս* անուն թագուհի մը, որ իր անունով Ֆէնէսէի ջուրն ալ կոչած է *Էլպիս, Պըլըսթ*, թերեւս երկրորդը կրճատումն է *Էլպիսատուրի*:

Բերդին արեւմտեան հիւսիսէն հանուած հաստափոր փողրակները ցոյց կու տան, որ պատմական բազմամարդ Զօմախլուն ժամանակին բաւարար ջուր փոխադրեր էր, Արգէոսի Թէքիրէն՝ *Չաղլաղանի* ուղղութեամբ, կամ թերեւս Արգէոս ժամանակին աւելի ջուրի ստինքներ ունէր, որոնք ցամքեր են:

Վերջին տարիներ բերդի հարաւէն երեւան հանուած ջաղացքի ամբարներն ալ ուրիշ փաստեր են այս ենթադրութեան: Իսկ ջաղացքի ամբարները մասնաւորաբար ուշագրաւ էին անով որ պատրաստուած էին որձաքարերէ, ապարանջանի ձեւով օղակներ իրարու մէջ ագուցուած: Ամբարները շինուած էին կանգուն, ուղղաձիգ: Մեր օրերու ջաղացքի ամբարները տախտակէ կը շինէինք եւ շեղ դիրքով:

Կարծողներ եղան որ *Ղալէն*, Բագրատունի Գագիկ թագաւորին սպանդարան բերդն է: Մեր կարծիքով այդ բերդը պէտք է որոնել աւելի արեւելք, *Պասթըլու* թրքաբնակ գիւղին դէմը: Մեր *Ղալէ* եւ *Սուլթան-տաղը* բերդերը սեփականութիւններ ըլլալու են Տաւրոսեան իշխաններու, բերդեր՝ որոնցմէ շատ ու շատ կը գտնուին *Կիզիլտարայի* մէջ եւ *Տաւրոսի* բարձունքները:

Աւերակներու մէջէն միայն մէկ արձանագրութիւն երեւան հանուած էր, խոշոր շիրմաքարի մը վրայ լատիներէն տառերով, որ կը մնար Վերի Թաղի դպրոցը, բայց մեզի համար անըմբռնելի:

Թանկարժէք հնութիւններ էին նաեւ վաղնջական գերեզմաններէ հանուած երկաթէ եւ պղինձէ գործիքներ, կէտկիտուն սափորներ, ծաղկահիւս խաւեաններ, մոխրալիր նախշուն սրուակներ, ջախջախուած զէնքի կտորներ, խոհանոցի զանազան առարկաներ:

Մեր պապերու օրով, մանչու մը խեցի կիսարձանը գտած է, Խաչիկեան Հանի Թորոս: Արձանը տուն բերած օրը ընտանիքէն մին հիւանդացած ըլլալով, մամիկները խորհուրդ տուած են իրեն որ անմիջապէս հեռացնէ այդ *կուռքը* իր *քրիստոնեայ* տունէն, այլապէս այդ հիւանդութեան պիտի յաջորդեն ցաւալի դէպքեր: Խեղճ գեղջուկը վախնալով Աստուծոյ բարկութենէն այդ օրն իսկ արձանիկը կը տանի Էվէրէկ եւ կը ծախէ մէկ լիրա աղի:

Անգամ մը Թուրք կառավարութիւնը Վարի Թաղեցի Գալֆայեան Յակոբէն գրաւեց հնութիւն մը: Կէս կանգուն երկայնքով պղնձեայ խողովակաձեւ գործիք մ'էր: Հիանալի էր վրայի աղջկան մը գեղակերտ պատկերը, բարձրաքանդակ եւ փռիւգական ծամի հիւսկէններով:

Յակոբ (Պալը) Օմարբեան կը պատմէր, որ 1900ին ինքը ընկերացած գերման հնախոյզներու, որոնք քարտէսէ մը առաջնորդուելով *Պէյնէմի* մօտերը գտան գրկաչափ որձաքար մը բոլորշի, որուն մօտ գիշերեցին: Հնախոյզները երբ արշալոյսին մեկնեցան, ինքը կը տեսնէ որ այդ ագուցուած քարը բացուեր էր եւ սնամէջ զանկի մը նման կը մնար հոն» (*Գալֆայեան*, «Զօմախլու», 12–15)։

*Տեղւոյն ծանօթ գրողին այս մանրամասն նկարագրութիւնը նոյնութեամբ մէջ բերի որպէսզի ընթերցողը համոզուի կատարելապէս, տրուած փաստերով թէ Զօմախլուի վայրը ամենահին ժամանակներէ և նոյնիսկ նախապատմական շրջանէ սկսեալ մարդկային բնակավայր մը եղած է, ուր կապադովկեան, հռոմէական և բիւզանդական քաղաքակրթութիւնները իրենց որոշ հետքերը թողած են։*

*ԹԱՂԵՐԸ.*

*Զօմախլու բաժնուած էր երկու թաղերու՝ Վարի և Վերի անուններով։*

*Վարի թաղը ունէր* 150 *տուն Հայ,* 20 *տուն Բողոքական և* 25 *տուն Թուրք բնակիչ* (*Յ. Արզումանեան*, Էվէրէկի Պատմ. *էջ* 43)։

*Վերի թաղը ունէր* 180 *տուն զուտ Հայ բնակչութիւն* (*Նոյն*)։ *Սակայն Պ. Արիս Գալֆայեան որ աւելի իրազեկ է կ'ըսէ թէ* 1914*ին Զօմախլուի մէջ կը բնակէին երկու թաղերուն մէջ համագումար* 282 *տուն և* 1750 *անձ Հայեր, որոնցմէ* 250*ը Բողոքական* (*Զօմախլուի Վարի և Վերի թաղերու պատկերները. տես գործիս, էջ* 13 *և* 15)։

## ՀԱՅԵՐԸ ԶՈՄԱԽԼՈՒԻ ՄԷՋ.

Զոմախլուի տեղը կամ անոր շատ մօտերը գիւղեր կամ քաղաքներ ըլլալը ինչպէս տեսնուեցաւ շատ պայծառ իրողութիւն մըն է, սակայն յայտնի չէ որ հնութեան ո՞ր քաղաքին կը համապատասխանէր և հին ատեն Հա՞յ բնակիչ ունեցած էր։

Այս մասին կարող չեմ որոշ կարծիք մը յայտնելու, թէև գիտենք թէ Կապադովկիա միշտ լեցուն էր Հայերով։ Եթէ նոյնպէս ճիշդ ըլլայ Գ. Ա. Գալֆայեանի կարծիքը թէ Կիզիսրա մօտն էր Զոմախլուի, — ինչ որ խնդրական է — դարձեալ կարելի չէ ըսել թէ Զոմախլու հայաբնակ եղած է ԺԱ. դարէն սկսեալ, քանի որ Զոմախլու նոր քաղաք մըն է, և հազիւ 250 տարիներու հնութիւն մը ունի։

Այս պատճառով զայն կ'անգիտանան և ցուցակի չեն անցուցած իբր Կեսարիոյ առաջնորդութեան ենթակայ վայր, թէ՛ Երեմիա Դպիր Օշականցի և թէ Սիմէոն կաթ. Երեւանցի, 1765ին։

Զուկէ զաւակ պահուած աւանդութեան մը համաձայն որ ծերունիները կ'ըսէին, Զոմախլուի հիմնադիրները եղած են Արեւելքէն եկած Հայ գաղթականներ որոնք Տէվէլուի Աղաներու հողերուն վրայ հաստատուած են։

Ցետոյ ասոնց վրայ աւելցած են Կիլիկիայէն, Սիսէն, Զէյթունէն Թոմարզայէն եայլ բերուած գաղթականներ որոնց սերունդները գիտէին թէ իրենց նախնիքը այդ տեղերը եկած էին։ Մուշի կողմերէն ալ մի քանի ընտանիքներ եկած են հոս (Ա. Գալֆայեան, Զոմախլու, 15)։

Նախ հիմնուած է Զոմախուի երկու թաղերէն Վերինը և յետոյ Վարինը։

Դալով զուտ Հայ այս գիւղին անունին, թէև զանազան կարծիքներ յայտնուած են (տես Նոյն, էջ 15–16) սակայն ամէնէն հաւանականը և տրամաբանականը սա է որ գիւղին հիմնարկութեան ատեն վայրը ծածկուած էր վայրի ծառերու կռճղացած՝ չոմախ դարձած՝ արմատներով, որով տեղն ալ կոչուած է Զոմախլու (Նոյն, էջ 16)։ Արիս Գալֆայեան կը հաստատէ թէ արդարև 50 տարի առաջ մասրի, մոշայի, տանձի կռճղացած բուներ տակաւին շատ կային Զոմախլուի շրջակայ լեռները, որոնք իբր վառելանիւթ կը գործածուէին։

Զոմախլուի Հայոց նախնիքը Հայաստանի ո՞ր մասէն եկած ըլլալը յայտնի չէ և կատարուած զանազան ենթադրութիւնները ո՛չ հիմ ունին և ո՛չ ալ արժէք կը ներկայացնեն։ Հաւանական է որ Զոմախլուի առաջին բնակիչները իբր ճորտ Տէվէլուի Աղաներուն — որոնք տէրէպէյական իշխանութիւն մը ունէին Տաւրոսի բարձունքներուն վրայ — հաստատուած են այս շրջանակին մէջ։

## ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ.

Զոմախլու ըստ Ա. Գալֆայեանի հիմնուելէն վերջ քանի մը տասնեակ տարիներ՝ կ'երեւայ թէ ո՛չ եկեղեցի ունեցած է և ո՛չ ալ եկեղեցական (Զոմախլու, էջ 43)։

«Ի վերջոյ անոնց գիւղապետները համոզեր եւ հաւանութիւն կրցեր են առնել աղաներէն, որպէսզի կարենան աղօթարան մը հիմնել, պայմանաւ որ անոր կառուցման եւ մասնակարարութեան մասին ժողովուրդը հողատէրերէն ոեւէ ակնկալութիւն չսպասէ եւ տարուէ տարի որոշ *խարած* մըն ալ վճարելու տրամադիր գտնուի ի հաշիւ աղօթարանի» (Զոմախլու, էջ 43)։

Այս համաձայնութեան վրայ Զոմախլուցիք իրենց սեփական միջոցներով և անձնական աշխատանքով կը կանգնեն գիւղին առաջին մատուռը, Ս. Թորոս անունով, Վերի թաղին մէջ (Նոյն)։

Այս մատուռը 60 տարիներու չափ բաւարարած է երկու թաղեցիներն ալ։ Վերջերը, Ս. Թորոս քանդուած աւերակ մըն էր։ ժամանակ մը իբր ախոռ գործածուելէ ետքը, վերջերը ամբարի վերածուած է, և տասանորդ առնողներուն վարձու կը տրուէր ի հաշիւ վարժարանին (Նոյն)։

«Կը պատմուի թէ Ս. Թորոս շինուելու ատեն Վարի Թաղի մէջ բնակող քանի մը տուն Թուրքեր Աղաներէն կը խնդրեն որպէսզի Հայերը իրենց համար ալ մզկիթ մը կառուցանեն: Աղաները սոյն սիրով կ'ընդունին խնդրանքը եւ մերոնք *յօժարութեամբ* շիներ են զայն եւս՝ իրենց սեփական միջոցներով եւ որ մինչեւ վերջ կը մնար կանգուն» (Նոյն, 43)։

Հայ բնակչութեան աճման պատճառով, 1860ին Վարի թաղի մէջ պէտք կը տեսնուի երկրորդ եկեղեցիի մը, որ կը կառուցուի Ս. Յակոբ անունով, որ Ս. Թորոսի անգործածելի դառնալէն յետոյ՝ իբր աղօթարան կը ծառայէր երկու թաղեցւոց։

Ս. Յակոբի շէնքը Ս. Թորոսէն աւելի հաստատուն էր և ընդարձակ, բաւական ճաշակաւոր գեղարուեստական որմնանկար մը ունէր։ Տաճարին երկու ճակատները հրեշտակներու պատկերներ գծուած էին թռուցեալ դիրքով, դէմքերնին դէպ ի տաճար դարձած։ Տաճարի կուշտի երկու պահարաններուն վրայ կային նաև Սահակի և Մեսրոպի պատկերները ծնրադիր դիրքով և երկնատես հայեացքով։ Տաճարին վերտառութիւնն էր «Զայս պատուիրեմ Ձեզ, զի սիրեսջիք զմիմեանս», գրուած շատ մաքուր բոլորագրերով։ Վերտառութիւնը եզերող երկու կանանչ ժապաւէններ սուրբերու պատկերներուն մօտ միացած և ապա ամբողջ շէնքին լուսամուտներուն պսակ կազմելով վերջացեր էին աւագ դուռը (Նոյն, էջ 43–44)։

Եկեղեցին ունէր թանկագին սպասներ, ճաճանչաւոր խաչեր, արժէքաւոր շուրջառներ, արծաթապատ և արժէքաւոր իւղաբերից մը և ոսկեղէն հիանալի աղաւնի, որոնք մեծ մասամբ Ս. Թորոսէն բերուած էին։

1890ին Վերի թաղի մէջ կառուցուած է Ս. Լուսաւորիչ եկեղեցին միայն Վերի թաղեցւոց ջանքերով և Կիւլպէնկեանց 500 ոսկի նուիրատուութեամբ։

Ս. Լուսաւորիչ աւելի շքեղ էր և հոյակապ, անսիւն էր այն և տախտակեայ կամարակապ ձեղունով։ Այր և կին, ծեր և տղայ, սայլով, սայլակով, կռնակով՝ գոգնոցով շինութեան նիւթերը կը կրէին, ուրիշներ բրիչով ու գլուղքով կը հարթէին յատակը, ուրիշ խումբ մը կ'աշխատէր, պատերու վրայ և ձեղունի վրայ զուարթ երանգուն։ Թաղեցին լման աշխատանքի լծուած էր առանց վարձքի, այրի կիներ գոգով գոգնոցով կրեցին լմնցուցին հողը, կիրը, շաղաղը և կղմինտրը (Նոյն, էջ 44)։

Ս. Լուսաւորիչ որմնանկար չունէր։ Սեղանի Աստուածածինը միակ պատկերն էր։ Վերնատան մէջ ալ կիները փոքրիկ Աստուածամայր մ'ունէին մշտավառ կանթեղով մը։ Նշանաւոր էր խաչկալը, երեք կաթողիկէներով ոսկեզօծ փայտեայ և գեղակերտ, Թոմարզացի վար-

պետներու և Ֆէնէսէցի Սուքիաս Գալֆայի ձեռակերտը։ Խաչկալի և տաճարի կառուցման մէջ մեծ բաժին ունեցած են նաև տեղացի արհեստաւորներ։ Տաճարը ունէր վերտառութիւն մը «Ձամենայն զոր ինչ խնդրեսջիք հաւատով յանուն Որդւոյ ի Հօրէ տացի Ձեզ». մաքուր երկաթագիր։

Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ հիմնադիրը ղաժ է Սարգիս քհ. Գալֆայեան († 1889) որ ուսեալ չէր, սակայն մեծապէս կը շահագրգռուէր իր հօտին տնտեսական բարօրութեամբ, և գարնան ու աշնան սերմանումի եղանակին, ամէն Երկուշաբթի կ'այցելէր արտերը, հրահանգներ կու տար, կը խրախուսէր, աշխատանքի կը մղէր։ Այգեմըշակութեան, մեղուաբուծութեան և ծառամշակութեան նախաձեռնութիւնը Զօմախլու կը պարտէր իրեն։ Այս քահանան գիտէր նաև բժշկութիւն, դեղ կը գործածէր. հոգեբոյժ էր։ Թաղուած էր իր շինած եկեղեցիին բակը (տես Զօմախլու, էջ 46)։

Վերջին տարիներուն եկեղեցիին աւագ դրան վրայ վիմափոր արձանագրութիւն մըն ալ զետեղուած էր, տառաւորով գրուած, երախտագիտական յիշատակարան մը ձօնուած՝ Կիւլպէնկեան գերդաստանի։

Ս. Յակոբի սպասներէն միայն մաս մը առնուած է Վարի Թաղեցիներէն, որոնց մէջ թանկարժէք խաչ մը կար ճաճանչաւոր և խոշոր։

Հետզհետէ եկեղեցին ունեցած է անթիւ խաչեր, սպասներ, ջահեր և զգեստեղէններ։

Զօմախլուի եկեղեցիներն ալ, Ս. Յակոբ և Ս. Լուսաւորիչ, տեղահանութենէն յետոյ ախոռի վերածուած են, իսկ Լուսաւորիչի խաչկալի կաթողիկէներէն շինուած են կաքաւի վանդակներ (Արիս Գալֆայեան, Զօմախլու, էջ 45)։

КРОНАКАН ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ.

Զօմախլու ալ ունեցած է յարանուանական պառակտում։

1855ին երբ Տօքթ. Զարլս Ֆարնսըըթ իբր միսիոնար աւետարանչական գործով կ'զբաղէր Կեսարիոյ մէջ, կ'այցելէ նաև Զօմախլու և հիւրը կ'ըլլայ երեւելիներէն Հաճի Թորոս Արթինեանի, որ կը հետաքրքրուի Աւետարանի քարոզչութեամբ ու կը թոյլատրէ անոր որ քարոզէ իր սենեակին մէջ։ Այս կերպով կ'սկսի բողոքականութիւնը Զօմախլուի մէջ։ Վերի թաղէն ոմանք եւս հետաքրքրուած կ'երթան ունկնդրել միսիոնարը և կը յարին անոր։ Հետզհետէ իրենց թիւը կ'աւելնայ, քանի մը տարիներ առանց ժողովարանի մնալէ յետոյ 1860ին, Վերի Թաղի առաջին բողոքականութեան յարողներէ վերիթաղեցի Հաճի Ղազար Խաչիկեանի հսկողութեան տակ և Ամերիկեան միսիոնարներու օժանդակութեամբ կը շինուի ժողովարան մը Վարի Թաղին հիւսիսային կողմը, որ թէ՛ իբր աղօթատեղի և թէ՛ իբր դպրոց կը ծառայէր Բողոքականներու։

Շէնքը բաւական ընդարձակ էր և ունէր փայտաշէն փոքրիկ զանգակատուն մը։ Դպրոցը ունեցած է երբեմն փայլուն շրջաններ (Զօմախլու, էջ 167-168)։

1872-73ին բողոքականաց թիւը 10 տուն էր (Համառ. Կեդր. Վարչ.) սակայն յետոյ մինչև 25-30 տունի բարձրացաւ։

Զօմախլուի մէջ կար նաև կրօնական աղանդ մը, Հիւլիւլիւ (Մուհապէթճի) աղբարներու աղանդը։ Ասոնք ընդհանրապէս չէին կտրըւած մայրենի եկեղեցիէն և կը յաճախէին Հայ եկեղեցի, միայն կը սիրէին թուրքերէն աղօթել։ Հիւլիւլիւ անունին ծագումը յայտնի չէ, հակառակ որ անոր Զօմախլու մուտքը շատ հին չէ և Հայ յեղափոխութեան սկզբնաւորութեան շրջանին կը զուգադիպի։ Կիլիկեցի Տ. Գրիգոր և Տ. Ղեւոնդ ծանօթ յեղափոխական եկեղեցականները հիմնած են կրօնական այս եղբայրութիւնը, տեսակ մը Ճախիրութիւն, որուն անդամակցողները պարտաւոր էին արհամարհել աշխարհիկ վայելքները, պայմանադրական կարգ ու սարքը, դժբախտութիւնը և մահը (Զօմախլու, էջ 58)։

Զօմախլուի Հայերը միշտ կապուած են Կեսարիոյ առաջնորդական աթոռին, սկսեալ իր հիմնարկութենէն որ մերձաւորապէս 1700 թուականին ըլլալ կը թուի։

Զօմախլուի բարգաւաճումը ինչպէս կը տեսնուի շատ դանդաղ գնաց մը ունեցած է։



ՎԵՐԻ ԹԱՂԻ «ԽՐԻՄԵԱՆ» ՎԱՐԺԱՐԱՆԻ Բ. ՇՐՋԱՆԻ (1911) ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐ, ԱՇԱԿԵՐՏՆԵՐ ԵՒ ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԱՆԴԱՄՆԵՐ

*Ձախէն աջ եւ կանգնողներ (Ա. շարք).—* Գալուստ Աւագեան, Տիգրան Տէրտէրեան, Ռէթէոս Տ. Ներսէսեան, Պետրոս Պօղոսեան, Տրդատ Օմարբեան, Մաթէոս Սասունեան: *(Բ. շարք).—* Ռուֆիա Սասունեան, Յակոբ Շրխլեան, Գալուստ Հաճի Յակոբեան, Մարկոս Տէր Մարկոսեան, Մնակ Ջէրֆէսեան, Գաբրիէլ Էֆիզեան, Յարութիւն Արթինեան: *(Գ. շարք).—* Արշաւիր Սասունեան, Յարութիւն Գալճայեան, Կարապետ Պօղոսեան, Կիւլպէնկ Յակոբեան, Պետրոս Հաճի Աւագեան, Արսէն Շրխլեան։ *(Դ. շարք).—* Արա Դաւիթեան, Համբարձում Պէնցիեան, Վահան Մալխասեան, Գրիգոր Իսէփեան, Գէորգ Էֆիզեան, Աբրահամ Գզիրեան:

ԴՊՐՈՑՆԵՐ.

Ինչպէս տեսնուեցաւ իր հիմնարկութենէն հազիւ յիսնեակ մը տարիներ յետոյ անոնք կրցան ունենալ եկեղեցի։

Իսկ կրթական տեսակէտով դիտելի է որ Զօմախլու ամբողջ դար մը առանց դպրոցի մնացած է։

ԺԹ. դարուն սկիզբը Ս. Թորոս եկեղեցւոյ քահանայ՝ Տ. Մարկոս քհ. Մարկոսեան (†1840), իր սենեակը տրամադրելով երկու թաղերու տասնեակ մը փոքրիկներուն՝ ինքը կ'սկսի սորվեցնել գրել-կարդալ։

Տ. Կարապետ քհ. «Մեծ» կոչուած, որդին Տ. Սարգիս քհ. Գալֆայեանի, Վարի Թաղին մէջ իր սենեակը կը հաւաքէ թաղին փոքրիկները և անոնց դաստիարակութիւնը կը յանձնէ իր զաւակներուն, իր հսկողութեան տակ։ Այդ զաւակներէն մին էր Յովհան, որ յետոյ եղաւ Եղիա վարդապետ և միւսը Տ. Յակոբ քհ.։ Այդ փոքրիկները գրել-կարդալէ և հաշիւէն զատ կը սորվէին նաև տիրացութիւն, Շարական, Սաղմոս, Աւետարան, գրաբար քերականութիւն և գրաբարէ թուրքերէն թարգմանութիւն։

1872-73ի գաւառական վիճակագրութեան մէջ նշանակուած անանուն վարժարանը՝ ուր կը յաճախէին 40 մանուկներ միայն 1200 դրշ. տարեկան ծախքով, անշուշտ այս անհատական նախաձեռնութեանց արդիւնքն էր։

1885ին Տ. Յակոբ քհ. երբ կը ձեռնադրուի, եկեղեցիին մօտ շինել կու տայ փոքրիկ դպրատուն մը, որ մինչև վերջ կը ծառայէր իբր Վարի Թաղի կրթարանը (Զօմախլու, էջ 59)։

Զօմախլուցիք Վերի Թաղի մէջ ալ կազմակերպեցին վարժարան մը, որուն առաջին ուսուցիչն էր «վարժապետ» անունով աւելի ծանօթ և իր անունը գրեթէ մոռցուած Տիրացու Կարապետ Տ. Մարկոսեանը (1858-1918) որ իր հասուցած սերունդին հետ տարագրուեցաւ Արաբիա և մնաց Հաւրանի անապատները։

Իր միամօր տղան էր Մարկոս Տ. Մարկոսեան։ Ինչպէս վարժապետ Ճանկըրը՝ իր հօրը, նոյնպէս էֆէնտին՝ սեփական տիտղոս մնաց իրեն։ Ան Թոմարզայի մէջ ուսած՝ ուսուցման գրութեան մէջ նորութիւններ մտցուց և արդիականացուց։ Գիտէր լաւ հայերէն, թուրքերէն, անգլերէն և ֆրանսերէն, նաև հայկական և եւրոպական ձայնագրութիւն (Զօմախլու, էջ 64-65)։ Զօմախլուի Վերի Թաղին վարժարանը ի յիշատակ Տ. Մարկոսեան Կարապետ և Մարկոս հայր և որդիներու, որոնք անոր հիմնադիրը եղած էին կը կոչուէր Մարկոսեան և 1901ին ունէր 73 մանչ աշակերտներ 1 ուսուցիչով և 75 դրշ. ամսական ծախքով, որ թոշակներէն կը գոյանար։

Իսկ Վարի Թաղին վարժարանը կը կոչուէր Թորգոմեան և 1901ին ունէր 50 մանչ աշակերտներ 1 ուսուցիչով և 50 դրշ. ամսական ծախքով որ նոյնպէս տղոց թոշակներէն կը հոգացուէր։

Երբ Ամերիկայի մէջ 1906 Սեպտ. 1ին կը կազմուի Զօմախլուի Ազգ. Կրթասիրաց Միութիւնը նպատակ ունենալով Զօմախլուի և շրջակայ գիւղերու աղքատիկ Հայ մանուկները ձրիաբար կրթել, անոնք կը հիմնեն Խրիմեան վարժարանը Վերի Թաղին մէջ և «էֆէնտին» հոն կը փոխադրեն ուր արդիւնաւոր կերպով կը պաշտօնավարէ մինչև տարագրութիւն (Զօմախլու, էջ 161-163)։

Զօմախլուի Կրթասիրաց Միութիւնը կը բանայ նաև Վարի Վերի և



թաղերուն մէջ երկու աղջկանց դպրոցներ, և 1911ին կ'ստանձնէ երկու թաղերուն կրթական գործը հաւաքաբար։

ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ՈՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

Զօմախլուի Հայերը կը խօսին իւրայատուկ բարբառ մը որ իր երկու դրացի մեծ կեդրոններուն, Էվէրէկի և Թոմարզայի Հայերու լեզուէն կը տարբերի, ինչ որ ինքնին կը հերքէ այն տեսութիւնը թէ Զօմախլու ալ Էվէրէկի կամ Թոմարզայի չափ հին է և անոնց հետ կապ մը ունի։

Զօմախլուցիք ճորտական դրութեան մէջ, առանց հողի սեփականատիրութեան, ապրած են մօտաւորապէս հարիւր յիսուն տարիներ (Զօմախլու, էջ 48), որմէ վերջ Զօմախլու գրեթէ միամինակը սապ սրէզ նետուելով պայքար մղած է և փշրած՝ աղաներու բռնակալութիւնը և յաջողած իր ձերբազատութիւնը ձեռք բերել։

Այս գործին մէջ մեծ դեր կատարած է արիասիրտ քահանայ մը՝ Տ. Կարապետ Փոքր որ 1868ին ձեռնադրուած էր Ս. Կարապետ վանքին մէջ Զօմախլուի Ս. Յակոբ եկեղեցիին վրայ։

1869ին Օսմ. Կառավարութիւնը կ'որոշէ որ դատարաններու մէջ ընդունուին փոքրամասնութեան ներկայացուցիչները և ընտրութիւնը Էվէրէկի գաւառակին մէջ կը շահի Տ. Կարապետ քհ. որ կ'սկսի գիւղերու մէջ բրոբականտ ընել ընդդէմ Աղաներուն։

Ասոնք կ'որոշեն մէկ անգամէն հարուածել և վերցնել իրենց դէմ



ԶՕՄԱԽԼՈՒԻ ՎԱՐԻ ԹԱՂԻ «ԽՐԻՄԵԱՆ» ՎԱՐԺԱՐԱՆԻ ԸՆԹԱՑԱՒԱՐՏՆԵՐ ԵՒ ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԱՆԴԱՄՆԵՐ

*Ձախէն աջ նստողներ.*— Պետրոս Պօղոսեան, Յակոբ Խաչիկեան, Կարապետ Շրխլեան, Գալուստ Հաճի Յակոբեան, Սուքիաս Ասատուրեան, Սեդրակ Էքիզեան: *Ձախէն աջ կանգնողներ.*— Մակար Էլիքիւչիւքեան, Լեւոն Գայըրմճեան, Գրիգոր Տէր Գալուստեան, Արիս Տ. Ս. Գալճայեան, Ներսէս Էքիզեան, Յարութիւն Մատթէոսեան, Հմայեակ Շրխլեան:

պատրաստուած դաւադրութիւնը։ Մանաւանդ իրենց ախոյեանին Տ. Կարապետին գալ և դատարանի մէջ իրենց կողքին տեղ գրաւելը չէին կրնար մարսել։ Ուստի անոնք կը կաշառեն Կեսարիոյ աւազակներէն Միւքրէմին անուն յելուզակը, որ Էվէրէկ – Զօմախլու ճամբու վրայ Պօղազ կոչուած տեղը դարանակալ կ'սպասէ և Տ. Կարապետի անցած ատեն կը պլլուի ձիուն սանձին և դաշոյնը կը քաշէ և սակայն իր վատ արարքը չի կրնար գործադրել, բազուկները կը թուլնան և ներողութիւն կը խնդրէ։

Տ. Կարապետ ձիէն վար իջնելով կը բռնէ աւազակին ձեռքէն կը վերցնէ և կ'ըսէ «Գնա՛, ասկէ վերջ ուժդ գործածել գիտցիր տկարներու պաշտպանութեան համար»։

Ասկէ յետոյ հողատէր Տանապաշ, 1869 Վարդավառի Կիրակին պատարագի ատեն պաշարել կու տայ Ս. Յակոբ եկեղեցին իր քիւրտ ղօլամներուն, որոնք ժողովուրդը ամբողջ իր քահանաներով կ'առաջնորդեն դէպի Տէվէլու գերի տանելու պէս։

Տանապաշի վերահաս մահը՝ որ նախախնամական դիպուած մըն էր, կը փրկէ Զօմախլուցիները և ասիկա քաջալերութիւն մը կ'ըլլայ որ Հայ և Թուրք գիւղերը կատարեալ հաւատքով փարին գործի։

Տ. Կարապետ քհ. կը շրջի գիւղերը և գիւղապետներուն ստորագրել կու տայ համաձայնագիր մը, որուն համաձայն ամէն գիւղ յանձն կ'առնէր իր բնակչութեան թուին համեմատութեամբ դատական ծախքերու մասնակցիլ։

Էվէրէկի նախագահ ատեանին առջև կը պարտուին։ Թուրք գիւղերը ասոր վրայ կը լքեն գործակցութիւնը և Աղաներուն զիջում կը յայտնեն, յանձանքը բեռցնելով Զօմախլուի ղարապաշին, Տ. Կարապետին վրայ։ Հայ գիւղերը կը մնան առանձին, նշաւակ Թուրք Աղաներու սպառնալիքներուն։

Երբ Կեսարիոյ վերաքննիչ ատեանն ալ ի նպաստ աղաներուն կ'արտայայտուի, այն ատեն Հայ գիւղերն ալ Թուրքերու օրինակին կը հետեւին և Զօմախլու միամինակը կը մնայ Աղաներու դէմ դիմաց։

Տ. Կարապետ քհ. և Զօմախլուի աւագանին կ'որոշեն պայքարը շարունակել:

Դատավարութիւնը կը փոխադրուի Ինճարէ ուր կը փութայ Տ. Կարապետ քհ.։

Ֆէյզուլլահ աղա, Տանապաշի տղան և Տէվէլուի Աղաներու պետը, խումբ մը Թուրքեր վարձելով կը ղրկէ Զօմախլուի արտերը որպէսզի գազերը կտրեն, աշխատանքը փճացնեն և աշխատաւորները ահաբեկեն։ Զօմախլուցիք այր և կին քարերով կ'ելլեն անոնց դէմ և կը հալածեն։

Ինկիւրիւի մէջ ալ կը ձախողի Տ. Կարապետ։ Յուսահատութիւնը ընդհանուր էր, բոլորն ալ կը տկարանան և նոյնիսկ կը խնդրեն արիասիրտ Քահանայէն որ գայ և Ֆէյզուլլահ աղային ոտքը իյնայ։

Տ. Կարապետ կը պատասխանէ «լաւ է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս» և կը դիմէ Կ. Պոլիս, վճռաբեկ ատեանին (1873)։

Գալաթիի եկեղեցին կը քահանայագործէ և իր բոլոր վաստակը կը յատկացնէ այս դատին։

Կը կազմէ Էվէրէկի և շրջակայից պանդուխտներէն «Արամեան Ընկերութիւն» մը կրթական նպատակով, և ժապաւիննեալ տոմարով և



դանձանակով դրամ կը հաւաքէ Զօմախլուի կրթական գործին ի նպաստ։

Այս ընկերութիւնը որ մինչև 1895 հայկական դէպքերը շարունակուած է, միեւնոյն ատեն կը կազմէ Յանձնախումբ մը որ մասնաւոր դիմումներով դատավարութեան ծախքերը կը հոգար։

Չորս երկար տարիներու հետապնդումէն յետոյ 1877ի ձմեռը Տ. Կարապետ քհ. կրցաւ ձեռք բերել Տէվէլուի դատարանին անիրաւ վճիռին բեկանումը, որով Զօմախլու և բախտակից միւս գիւղերը ազատեցան միւսթէճէրութեան տարհապարհակ աշխատանքներէն, հողը հռչակուեցաւ սեփականութիւն պետութեան և մշակը սեփականատէր և կառավարութեան հարկատու եղաւ։

Տ. Կարապետ 1878 գարնան դարձաւ իր ծննդավայրը ընդհանուր խանդավառութեան մէջ ուր մինչև իր մահը (1884) շարունակեց իր քահանայական պաշտօնը։

Զօմախլու այսպէս ազատեցաւ Աղաներէն սակայն ծանր պարտքերու տակ մնաց և մինչև վերջ հեծեց դառնօրէն (հմմտ. Արիս Գալֆաեան, Զօմախլու, էջ 48-56)։

Տնտեսական մարզի մէջ Զօմախլու արդէն բախտաւոր չէր եղած։

Զօմախլուցիք կ'ապրէին նահապետական կենցաղով, և իրենց գլխաւոր զբաղումն էր ի սկզբան հողագործութիւն և անասնապահութիւն (Զօմախլու, էջ 36)։

Հողը որ նախապէս կոյս էր և բերրի, երթալով նուազեցուց իր արտադրութիւնը, որով աշխատող բազուկները սկսան թուլնալ։ Աղաները հետզհետէ սկսան պահանջկոտ դառնալ, միւս կողմէն նորանոր ճորտերով խտացուցին իրենց ագարակներու բնակչութիւնը և բնակչութեան թուոյն համաձայն հին հաշուով տուրք (խարաճ) կ'ակնկալէին, ինչ որ հասոյթի նուազման պատճառով կարելի չէր գոհացնել (Նոյն, էջ 37)։

Սով եւ սղութիւն մշտատեւ սպառնալիքներ էին, որոնց յաճախ կ'ենթարկուէր Զօմախլու։ 1888ին օրինակի համար այնքան դառն էր կացութիւնը հոն և շրջակայքը, որ Պատրիարքարանը դիմեց կառավարութեան որպէսզի օգնութիւն խնդրէ (Փունջ, 1888 թ. 2087)։

Պատահեցաւ որ օրին մէկը հողագործներու մեծամասնութիւնը թողուց հողամշակութիւնը և սկսաւ նոր արհեստի, զազագործութեան։ Հողը իր հմայքը կորսնցուցեր էր, փիւսճիութեան մէջ պէտք էր բախտ փորձել։

Արգէոսի բազուկները առհասարակ ծածկուած են ընդոծին զազերով։ Գազը ոզնիի նման փշոտ բոյս մըն է, որուն արմատը ամրան ճղելով կը հաւաքեն փիւս ըսուած խէժը (=fiprt)։

Փիւսճի մը օրական կրնար մօտաւորապէս օխա մը փիւս հաւաքել, որուն օխան առաջին բերանը կ'արժէ 20 ղրշ. իսկ յետինը 6 ղրշ, միջին հաշուով օրական 10-13 ղրուշի շահ մը։ Եթէ ամառը չանձրեւէր (փիւսը անձրեւ չի սիրեր, բայց գազն ալ առանց անձրեւի կը չորնայ), իւրաքանչիւր գործաւոր կրնայ 300 ղրուշի չոր հացագին մը ապահովել, տուժելով իր առողջութենէն, իբր թէ այս թեթեւ աշխատանքին լծուելով (Զօմախլու, էջ 37-38)։

Ասիկա պատճառ եղաւ որ Զօմախլուցիք վաշխառուներու շահագործման ենթարկուին։

Աղաները հողին հասոյթէն զրկուելով դրամական պահանջը շատցուցին և թոյլատրեցին որ Տէվէլու Էվէրէկի Թուրքերը խումբով յարձակին փիւճիւներու վրայ, խլշտկեն փիւսը և գազերը կտրեն և տանին ծախեն իբր վառելանիւթ (Զօմախլու, էջ 38)։

Վաղուց հարստահարութիւններ և բռնութիւններ ալ պակաս չէին։ Մասնաւորապէս Տէվէլուի աղաները որոնք կ'իշխէին Զօմախլուի, չէին բաւականանար իրենց խարաճը գանձելով, այլ երբ իրենք պատերազմներու ատեն թալանճիութեան կ'երթային խումբերով, կամ երբ խաղաղութեան ատեն կ'արշաւէին լեռնային Կիլիկիա և կ'ասպատակէին Հաճըն և Զէյթուն, այն ատեն այդ արշաւախումբերու պարէնը կը պահանջէին որ Հայերը հոգան և կռիւի գացող ղօլամներու տնական աշխատանքները կատարեն (Նոյն էջ 40–41), և եթէ կեավուրներու դէմ զէնքի բախտը ձախողէր Հայերը կ'ենթարկուէին փոխ-վրէժի։

1839ին Գօզան օղլու գերի ինկաւ և աքսորուեցաւ Արշիպեղագոսի կղզիներէն մէկը, բայց անոր յաջորդները նորէն շուտով տիրացան առանձնաշնորհումներուն և Գօզան օղլուի հողը բաժնեցին իրենց մէջ և Զօմախլուի նոր տէրերը սկսան նոր վայրագութեանց (Նոյն, 41)։

Ասոնք ամէնը պատճառ եղան որ երիտասարդութիւնը ձեռք առնէ պանդուխտի ցուպը դէպ ի Կ. Պոլիս, Ջալթալխանի անկիւնները կորսուելու, Էվէրէկի վաշխառուներէն ձեռք բերուած ճանապարհածախսի դրամով (Զօմախլու, էջ 38)։

1890էն յետոյ քանի մը Զօմախլուցիներ Ամերիկա կ'երթան։ Մինչև 1906 անոնց թիւը Ամերիկայի մէջ հազիւ 8–10 հոգի էր (Նոյն, 161)։

Անկէ յետոյ հետզհետէ կ'աճի, Ամերիկայի մէջ Զօմախլուցիներու թիւը։

ՀԱՅԱՉԻՆՋ ՍԱՐՍԱՓԸ ԵՒ ԶՕՄԱԽԼՈՒ.

Զօմախլու ունեցած էր մասնակցութիւն Փոքր Հայքի վրդովմանց մէջ 1893ին, սակայն զերծ մնացած էր 1895ի ջարդերէն, 1915ին հայաջինջ սարսափը կրելու համար իր բոլոր սաստկութեամբ։

1915 Փետր. 11ի Էվէրէկի ռումբին պայթումը ինչպէս բոլոր Կեսարիոյ շրջանին նոյնպէս նաև Զօմախլուի համար զարհուրանքի ու անասանելի չարչարանքներու պատրուակ մը եղաւ։

Էվէրէկի ռմբային գոհին հետ Ամերիկայէն ուղեկցող երկու անձերը, Միհրան Էլիքիւզեան և Աւետիս Էքիզեան, Զօմախլուցիներ էին և ասիկա բաւական եղաւ, որ ինչպէս բոլոր շրջանին, նոյնպէս նաև Զօմախլուի տարէց էրիկ մարդերը բանտ լեցուին և չորս ամիս շարունակ սարսափի մէջ ապրի գիւղը, զէնքեր հաւաքելու, թուղթեր փնտռելու և այլ պատրուակներով։

Շատեր մեռան ծեծի տակ և շատեր սպաննուեցան (տես ահարկու մանրամասնութիւնները Զօմախլու, էջ 75–151)։

Այրերու այս կերպով սպանդէն յետոյ, 1915 Յուլիս 2ին կիներ և տղաքներ, մի քանի մնացորդ այրերով՝ գիւղին նախիրին հետ՝ սայլերով ճամբայ հանուեցան։

Ամբողջ Զօմախլուն, կառավարութեան տուած հրամանին վրայ, յանկարծ և յանպատրաստից, մէկուկէս ժամուան ընթացքին պարպուեցաւ տարագրութեան ճամբուն վրայ, խռնուելով 1646 հոգիի բազմութիւն մը։



Բովանդակ Զօմախլուն դուրս կը հանուի իր դարաւոր օճախէն, հոն կը մնայ միայն Պէնտիեան խենդ Տուտու անուն կին մը որ «հոս կը մեռնիմ նորէն դուրս չեմ ելլեր» կ'ըսէ ու կը մտնէ տունը և չգիտցուիր թէ ի՞նչ եղած է։

Տարագիրներու կարաւանը շարժուեցաւ դէպի հարաւ՝ Տաւրոսը ճեղքելով և անցաւ Հաճընէն, Սիսէն և Ճիհանի ճամբով հասաւ Օսմանիյէ և Հասանպէյլի, ուրկէ Ամանոսի բարձունքները մագլցելով, 40 օրուան տաժանելի հետիոտն ճամբորդութենէ յետոյ հասաւ Ղաթմա և Հալէպ, ճամբան կորսնցնելով 20 հոգի։

Օգոստոս 10ին կը քշուին երկաթուղիի բեռնատար կառքերով և կը տարուին աւելի հեռուն։

Դամասկոս կը մնան 30 հոգի, այրիներ և հիւանդներ, և միւսները կը տարուին Ամման ուրկէ կը բաժնուին զանազան ուղղութեամբ և կը ցրուին արաբ գիւղեր, Մեռեալ ծովուն հարաւակողմը իրարմէ անտեղեակ և աննկարագրելի թշուառութեան ենթարկուած, այնպէս որ ըստ Մ. Տէր Ներսէսեանի կազմած մէկ վիճակագրութեան 1646 տարագրեալներէն միայն վերապրած էին 325 անձ (տես Զօմախլու, 159)։

Զօմախլուի քահանաներէն Ներսէս քհ. Ներսէսեան (1) չէ տարագրուած, վասնզի իբր յեղափոխական և Բարեգործական Միութեան անդամ ամբաստանուելով՝ Թուրք չարչարանքին տեսակները կ'ըմբոշխնէ Էվէրէկի և Կեսարիոյ զնտաններուն մէջ և կը դատապարտուի Կեսարիոյ պատերազմական ատեանէն ցկեանս բանտարկութեան, և կը մնայ բանտը չորս տարի մինչև զինադադար, բոլորելով դժնդակ կեանք բանտին մէջ։ Պատրիարքարանի կարգադրութեամբ յետոյ Էվէրէկի մէջ պաշտօնավարեց, այլևս իր հօտը և և ծննդավայրը գոյութիւն չունենալով։

Իսկ միւս քահանան՝ Յակոբ քհ. Տէր-Կարապետեան (2) աքսորուեցաւ և թշուառութեան մէջ վախճանեցաւ։

Զօմագլըի և մերձակայ գիւղերու եկեղեցական նուիրական անօթները կողոպտուած են Սթանպօլլը Ահմէտի կողմէն։

ՋԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՅԵՏՈՅ.

Զինադադարէն յետոյ Զօմախլու չկրցաւ վերակազմուիլ։

Շինուած վիճակագրութեան մը համաձա՛ն հայաջինջ սարսափէն հիմա միայն կը վերապրին 231 ընտանիքներ և 871 հոգի (Զօմախլու, 116), մեծ մասը Ամերիկա, և մաս մը՝ Սուրիա և Յունաստան հաստատուած։

Միայն 10 ընտանիք և 40 հոգի կը մնան Թուրքիոյ սահմաններուն մէջ, իրենց ծննդավայրին մերձակայ Էվէրէկի մէջ հաստատուած։

---

(1) Ծնած 1872ին Զօմախլու, աշխարհական անունով Տիգրան, 1 Մայիս 1895ին ձեռնադրուած է Սանտալճեան Եպ.էն, Զօմախլուի Ս. Լուսաւորիչ եկեղեցիին վրայ։ Մեռած է Էվէրէկ 1921։

(2) 1852ին ծնած, որդի Տ. Կարապետ քհ.ի, ուսած է Ս. Կարապետի վանքը, նախ ուսուցիչ ի Ֆէնէսէ։ Ձեռնադրուած 1884ին Կեսարիոյ առաջնորդ Եղիա Եպ. Դերձակեանէ։ Հմուտ Ս. Գրոց, խօսող և վիճող, բուռն պայքար մղած է միսիոնարութեան դէմ։ Այնքան օրինակելի կեանքով մը սկսաւ իր հովուութեան, որ ունեցաւ մեծ ժողովրդա-

XXII

# ԻՆՃԷ ՍՈՒ(1)

ՏԵՂԸ.

Զօմախլուի հարաւակողմը և անկէ մէկ և Էվէրէկէն երկու ժամ հեռու, Թուրք և Հայ խառն բնակչութեամբ գիւղ մըն է Ինճէ-Սու։

ՀԱՅԵՐՈՒ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ.

Համեմատաբար նոր գաղութ մը պէտք է ըլլայ Ինճէ-Սուի Հայ գաղութը, թերեւս կազմուած Էվէրէկէ և ուրիշ տեղերէ տեղափոխուած Հայերով։

1765ին Սիմէոն կաթողիկոս Երեւանցի և իր գրագիրը Երեմիա դպիր Օշականցի երբեք չեն յիշեր այս քաղաքը, ինչ որ կը հաստատէ թէ դեռ հոն Հայեր չկային այդ ատեն կամ շատ քիչ էին։

Դիտելի է որ շրջակայքն ամբողջ հայախօս ըլլալուն հակառակ այս գիւղին Հայերը թրքախօս էին, ինչ որ կը թելադրէ խորհելու թէ Թուրքերէ բնակուած այդ գիւղը հետզհետէ այլեւայլ տեղերէ Հայեր հաւաքուած են և Թուրք մեծամասնութեան հետ յարաբերելու համար իրենք ալ թուրքերէնը գործածած են։ Պ. Արիս Գալֆայեան (Զօմախլու, էջ 19) կ'ըսէ թէ Տէվէլուի Աղաներուն բռնութեամբ մոռցած են հայերէնը, սակայն ասիկա հաւանականութենէ զուրկ կարծիք մըն է, վասնզի եթէ Տէվէլուի աղաները այս տեսակ բռնադատութեան մը դիմէին ամէնէն առաջ Էվէրէկ-Ֆէնէսէէն պիտի սկսէին։

ՀԱՅՈՑ ԹԻՒԸ.

Թէև նախ սակաւաթիւ սակայն շուտով աճած են։ 1901ին 150 տուն (Բնաշխարհիկ Բառարան), 1914ին 180 տուն (Թէոդիկ, Գողգոթա Թրքահայ հոգեւորականութեան) կամ 200 տուն Հայ բնակիչ կար հոն ընդդէմ 60 տուն Թուրքերու (Յ. Արզումանեան, Պատմ. Էվէրէկի, էջ 46)։

ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

Ունէին Ս. Թորոս անունով եկեղեցի մը և Ստեփանեան անունով վարժարան մը ուր 1872-73ին 50 մանչ և 1901ին 70 մանչ աշակերտներ կը յաճախէին, և ուսում կ'առնէին մէկ ուսուցիչի ձեռքին տակ։ 1872ին՝ 50 ղրշ. և 1901ին 25 ղրշ. ամսական ծախք ունէր դպրոցը որ աշակերտաց թոշակէն կը գոյանար։

ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿ.

Ինճէ-Սուի գիւղացիք առհասարակ կ'զբաղէին երկրագործութեամբ և կենդանաբուծութեամբ և իրենց սակաւապէտ կենցաղին համար կրնային նկատուիլ բարեկեցիկ։ Միայն երաշտութեան տարիներուն ենթարկուած են երբեմն տագնապի։ 1886ին այնքան սղութիւն կար որ Պատրիարքարանը ստիպուեցաւ ինչպէս Զօմախլուի նոյնպէս Ինճէ-Սուի համար կառավարութենէն օգնութիւն խնդրել։

ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ Տ. ԱՏՈՄ ՔՀ. ԱՆՋԻԿԵԱՆԻ

Ինճէ-Սուի Հայերն ալ քամեցին տարագրութեան դառն բաժակը, իսկ իրենց հոգեւոր պաշտօնեան Տ. Ատոմ քհ. Անջիկեանը ենթարկըւեցաւ այնպիսի անլուր չարչարանքներու որ իր գերատանջ մարտիրոսութեամբ արդարև կրնայ դասուիլ Երանելեաց կարգը։

Այս քահանան որ ծնած էր 1882ին Ինճէ-Սու(1), իր ուսումը ստացած էր Թոմարզայի դպրեվանքին մէջ և ապա եղած է դասատու և դպիր։ Աղէտէն 4 տարի առաջ, 1910ին, Տրդատ եպ. Պալեան զինքը կը ձեռնադրէ իր ծննդավայրին համար քահանայ, վասնզի տեղւոյն ծխատէրը՝ Տ. Խաչատուր քհ. Քիլիմեան՝ կքած էր արդէն 84 տարիներու բեռին տակ և անկարող այլեւս հովուելու իր հօտը(2)։

Տ. Արամ քհ. Անջիկեան իր ձեռնադրութենէն անմիջապէս յետոյ կը նուիրուի եռանդեամբ իր ծննդավայրին հովուութեան։

---

կանութիւն, 1893ին Փոքր Հայքի վրդովումներու ատեն, ինքն ալ ձերբակալուեցաւ և կրեց դառնագոյն տանջանքներ, արտաքնոցի զազիր գարշահոտութեան և աղտոտութեան մէջ պահեցին օրերով, անօթի ու ծարաւ, օրական քանի մը անգամ գանահարեցին, մօրուքը փետտեցին հերքաշով։ Ընդհ. Ներումով միայն ազատեցաւ։ Պ. Արիս Գալֆաեան կ'ըսէ թէ «Տ. Յակոբի կեանքը բանտէն ետք ունեցաւ դժբախտ վայրէջք մը։ Իր շուրջ ընող զրոյցները ժամանակ մը ա՛յն աստիճան համեմատութիւններ ստացան, որ զբաղեցուցին ազգ. պաշտօնական մարմինները, Կեսարիոյ Առաջնորդարանն ու Պոլսոյ Պատրիարքարանը։ Կրօն. Ժողովներ պաշտպանեցին զինքը, ընդդիմադիրները ճարահատ մաղ մնաց որ ոճիրի դիմէին։ Եւ հետեւանքը այն եղաւ, որ վերջի տարիները ժողովուրդը մնացեր էր անհովիւ։ Տ. Յակոբ մեկուսացած կը մնար իր սենեակը։ Այս մեկուսացման անուղղակի բարիքն ալ ան եղաւ, որ Տ. Յակոբ զերծ մնաց Սէֆէրպէյլիկի բանտարկութեան հետապնդումներէն և գիւղին հետ խառնուեցաւ աքսորի կարաւանին»։

(1) Այս Ինճէ-Սուն պէտք չէ շփոթել Կեսարիոյ կուսակալութեան ենթակայ 6 գաւառներէն մին ներկայացող Ինճէ-Սու գաւառին կեդրոնը եղող քաղաքին հետ որ կը գտնուի Կեսարիոյ հարաւ-արեւելեան կողմը 25 քիլոմէթր և Տէվէլու Գարա-Հիսարի հիւսիսային կողմը 35 քիլոմէթր հեռու։ Շրջակայքը ունի պզտիկ գետակ մը՝ Ինճէ Սու (բարակ ջուր) ուրկէ առած է քաղաքը իր անունը։ Քաղաքը ունէր նոր գեղեցիկ մզկիթ մը կառուցուած Սէլիմ պէյէ։ Ջորին մէջ գտնուած են մեծ թուով ժայռի մէջ փորուած անձաւներ և Բիւզանդական շինութեան մնացորդներ (Vital Cuinet Ա. 321-2)։ Ինճիճեան կ'ըսէ թէ քաղաքին «կործանեալ մասն ցուցանէ զնախնի մեծութիւն. բերդ նորա է ի վերայ բլրոյ»։ Ըստ ոմանց է Կամպէ Նախնի քաղաքն Կապադովկիոյ զոր յիշէ Պտղոմէոս» (Աճառհ. Ա. հտ. էջ 317)։ Երկու Ինճէ Սուերը իրարմէ զանազանելու համար Զօմախլու իհարաւակողը գտնուող գիւղը Փոքր Ինճէ Սու կոչած են ոմանք։



---

(1) Մկրտուած է Օհան անունով։ Հայրն էր Թորոս և մայրը Մարգըրիտ։

(2) Այս քահանան ծնած էր 15 Մարտ 1831ին, Ինճէ-Սու։ Աշխարհական անունն էր Աստուածատուր։ Ս. Կարապետի աշակերտ և փոքրաւոր Եղիա եպ. Դերձակեանի։ 1859ին ձեռնադրուած է Սեբաստիոյ Կարապետ եպ. Գալֆայեանէն՝ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին։ Ատեն մը Ատանա ալ քահանայագործած է։ Յայտնի չէ թէ աղէտի օրերուն ո՞ղջ էր թէ մեռած։ 1914 Ապրիլ 10ին տակաւին կ'ապրէր։

*Կեսարիոյ առաջնորդ Խորէն եպ. Պէհրիկեան գնահատելով այս վառվռուն քահանային խօսելու ձիրքը և կարողութիւնը 1912ին կը շնորհէ իրեն քարոզելու արտօնութիւն։*

*Այս անձնուէր եկեղեցականը ինչպէս ըսի կ'ունենայ արդարև Քրիստոնէութեան առաջին դարերու մարտիրոսներէն գերազանց նահատակութիւն մը որուն վկայաբանութիւնը ես կը քաղեմ Թէոդիկի* «Գողգոթա Թրքահայ հոգեւորականութեան եւ իր հօտին. Աղէտալի 1915 տարիին *ձեռագիր գործէն, նոյնութեամբ։*

«Բաղդատմամբ Կեսարիոյ շրջանի բոլոր եկեղեցականներուն հալածանքին, ամէնէն շատ եւ սոսկալի կերպով չարչարուող եւ վկայողն է այս անզուգական երէցը, որուն քաշածները՝ մեզ յանձնուած նօթերու համաձայն — մի ըստ միոջէ շարադրած ատենին՝ համակուած ենք անսովոր խռովքով մը —. կառավարութիւնը կը ձերբակալէ զինք, նախ՝ երիտասարդագոյն ըլլալուն իր կարգակիցներուն վրայ, յետոյ՝ ուսումնական ու պերճախօս, բնական այն համոզմամբ որ գաւառացի անձնիւր երիտասարդ հոգեւորականի խորք «յեղափոխական Հայ»ը կար ծուարած, զոր հարկ էր անհետել անպայման։ Տ. Ատոմ գիւղապետին հետ կը տարուի Էվէրէկ ու Ջէքիի կողմէ կ'ենթարկուի 20րդ դարու նորանշան հաւատաքննութեան մը զոր մանրամասնելն իսկ փշաքաղում կ'առթէ պատմողին եւ ունկնդիրին հաւասարապէս։ Մայիս 8ի իրիկուն, հայահալած այդ կառավարիչը կը կանչէ զայն բանտին պատկից խուցը, Փուրսիշի առաջին կայանը՝ որ տանջարան ալ էր։ Երբ իր չարանիւթ հարցմանց կ'ստանայ ժխտական պատասխան, կը հրամայէ պառկեցնել զայն յորասյս եւ «ֆալախան» անցունել ոտքերուն։ Խոշոր բիրի մը հարիւրաւոր անխնայ բախումներուն տակ՝ երբ արիւնը կ'սկսի ժայթքիլ անոր մորթահերձ ներբաններէն, հարուածները կը դադրին, մինչ գայմագամը կրկին կ'սիպէ յայտնել պատկանած կուսակցութեանը(?) թուղթերուն ու զէնքերուն թաքստոցը։ Անգոյ բաներու համար ի հարկէ կարելի չըլլար որոշ պատասխան տալ՝ դէմի հրէշը գոհացնող, որուն զայրոյթը թափ կ'ստանայ՝ հարցաքննութեանը բացասական արդիւնքէն։ Կը հրամայէ նորէն պառկեցնել «խոստովանելու յամառութիւնը գործող այս գոմիթաճին»։ Այս անգամ անոր արձակած ճիչերն այնքան ահռելի էին, որ կարծես բանտին պատերը պիտի փուլ գային. արիւնը կը հոսէր ապաժոյժ եւ զանահար միսերուն վրայ խոցերը կը մնային լայնապիպիզ...։ Ծեծը կ'սկսի վերստին. յախուռն հարուածները կը տեղան թիկունքին, իրանին, կողերուն ու կողոսկրներուն, մինչ Տ. Ատոմ գետին կը փռուի նուաղած։ —«Մահը կանուխ էր դեռ անոր համար որ ճշմարտութիւնը խօսելու կամակորութիւնը կ'ունենար...» այսպէս կը տրամաբանէր իր անունը տառապէս հակասող *խելացի*ն եւ իսկոյն պաղ ջուր թափել կուտար գլուխն ի վար, որպէսզի սթափէր ան եւ հարցումները դիմաւորէր նպաստաւոր կերպով։

Շիտակ քանակէն ծուռ գիծ մուրալու անօգուտ փորձ. գուցէ քանակը կոտրէր՝ բռնադատուած կորութիւնն առանց արտադրելու.— ժխտուած այդ դիւականութենէն անհա մոլեգնած, խոշտանգումի նոր գիւտ մը կ'ընէ Ջէքի — խելքին չարափոխեալ Աստուածը։ Երկու նալաններ կը զետեղեն ծունկերուն տեւ եւ սրունքները վրան ծալլելով կը նստեցնեն, մինչ երկու հոգի ուսերուն վրայ կը դնեն արջու թաթերնին, մարմինն ուժգնակի ճնշելով վար։ Ցօղոսկրի եւ ձգաններու ցաւալի ճարճատ մը լսելի կ'ըլլայ յանկարծ՝ ընդհանուր լռութեան մէջ. Կարամուրքը կը խախտի եւ քահանան կը փլի ինք իր վրայ...։ Ոստիկանին մէկը նոյն պահուն «նարկիլէ»ի մը կաշեփողին ծայրը կը մխէ դէպ ի սրբան, միւս ծայրէն փչելով։ Որովայնը կ'սկսի ուռիլ եւ առթել սարսռուր խիթեր, որոնց ազդեցութեան տակ՝ ատեն ատեն կերկերուն խռընչիւններ միայն կ'արձակէ մարմնոյն ամէն դիէն ցաւակոծ երէցը։ Քովի խցեակին մէջ բանտարկեալ ազգակից մը՝ Գ. Թագւորեան դողդղող գացեր էր արձանանալ իր խցիկին տախտակորմին ծերպերուն առաջք, ականատես ըլլալով երաշխէպի այս բազմազան կրկնութեանց որոնք անպարագրելի զուարճութիւն մը կը պատճառէին թէ՛ կառավարիչին եւ թէ իր արբանեակներուն, անոնց որ պատրաստ էին պաղ ջուրի կիրարկումը փորձել ամէն անգամ որ զոհը դալկանար ու դէմքն օրհասականի երեւոյթ մը ստանար։ Ժամերը կ'անցնին՝ տանջանքներու եղեռնական ցանցառութեամբ մինչեւ որ կարգը կուգայ եղունգները քաշելու արարողութեան։ Մատներուն ծայրերէն, ահա, կարմիր կը կաթկթէ՝ աքցանին բիրտ խածատումով։ (Հողանիւթ շինուածք, պարտութիւնդ ինչպէս դուրս կուտաս՝ երբ ցաւը խենթեցնէ զքեզ)։ Տ. Ատոմ կցկտուր բառերով կ'սկսի հաստատել իրեն վերագրուածները բոլոր, պատրաստակամութիւն իսկ յայտնելով ցոյց տալու խնդրոյ նիւթ առարկաներուն թաքստոցը... Դիւային ժպիտ մը կը փայլատակէ յաղթանակը վերջապէս տանող Ջէքիի աչքերուն մէջ։ Անմիջապէս մարմինը կը վերցնեն եւ զօտիներով կ'աղխաղխեն ձիու մը քամակին։ Ընչառութիւնը միայն կար զինքը դիակէ մը զանազանող...։ Մայիս 15ն էր։ Տասներկու ոստիկան հետեւորդ ունէր այս կիսամեռ ձիաւորը։ Կը հասնին Ինճէ-Սու։ Դառն յուսախաբութիւն։ Դահիճներուն կատաղութիւնը չափ չունի այլեւս՝ երբ իրազեկ կ'ըլլան թէ գիւղին մէջ հեւիհեւ իրենց փնտռածը գոյութիւն չունէր բացարձակ եւ թէ *քահանան ըրած էր անհիմն յայտարարութիւն մը՝ մահէն ազատելու յոյսով։* Հրամանը չ'ուշանար, տեսակ մը փոխ-վրէժ՝ այդ անպատկառ ստախօսութեան։ Ինճէ-Սուի հայորդիները կը հաւաքեն եւ մարղակներով ծեծ կը քաշեն վրանին։ Ըստ բախտի ձեռք անցուած 11 հոգի էին ասոնք. իրենց դիակները կը փռուին գետին, քահանային ալ մէկտեղ։ (Թոմարզայէն հրաշքով վերապրող Հայու մը՝ Մատաղճեանի պատմածին համեմատ, Տ. Ատոմի հայրը յիմարացած կը նետուի նահատակ զաւկին դիակին վրայ եւ իսկոյն կը յօշոտուի)։ Գայմագամը շուարած այդ քստմնելի տեսարանին առջեւ, կը հրամայէ *գնդակահարել բոլոր մեռելները որպէսզի պաշտօնապէս հաղորդէր թէ գիւղացւոց ապստամբութիւնը զսպելու համար էր որ եղած էին այդ սպանութիւնք։ Ու տեղեկագիրը կը խմբագրուի քաղաքապետական բժիշկին և վկաներու ստորագրութեամբ մատուցուելու Կեսարիոյ «միւթէսարըֆ»ին։* Տ. Ատոմի երիցուհին եւս նշաւակ կը դառնայ կերպ կերպ վայրագութեանց. նախ կ'անպատուեն զինք. կիրքերնին յագեցնելէ վերջ՝ ստինքներն արմատաքի կը կտրեն. խեղճը ցաւերու եւ արիւններու մէջ կը փչէ հոգին»։

*Այսօր Ինճէ-Սու ոչ եւս է, սակայն Տ. Ատոմ քհ. Անջիկեանի վկայութիւնը իբր նահատակութեան մը պատմութիւնը որ աշխարհի ամէնէն վայրագ բռնակալներն իսկ չեն կրցած յղանալ և գործադրել, պիտի ապրեցնէ Հայ ազգային մարտիրոսագրութեան պատմութեան մէջ իր գրաւած յատուկ տեղովը, այս թրքախօս և թրքանուն, բայց յաւէտ Հայ գիւղին անունը։*

## XXIII

# ԳԱՐԱՃ ԷՕՐԷՆ ԿԱՄ ԳԱՐԱՃԱ-ՎԻՐԱՆ[1]

ՏԵՂԸ.

*Գարաճ էօրէն կամ Գարաճա-Վիրան գիւղը Իվէրէկէն 3 ժամ հեռու գիւղ մըն է Յոյն և Հայ բնակչութեամբ։*

(1) *Զանդըրը, Մամախաթուն և այլ, ալ այս անունով գիւղեր կան։*

ԱՆՑԵԱԼ.

Գիւղին ծագումը անծանօթ է, սակայն անունը ցոյց կու տայ թէ աւերակաւայրի մը վրայ հաստատուած է: Հաւանական է ենթադրել թէ յունական գիւղ մըն էր ուր Հայերը վերջը հաստատուած են:

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱԺԱՆՈՒՄ.

Այս գիւղը ունէր 200 տուն բնակչութիւն որուն 100 տունը Հայ և 100 տունը Յոյն էր: 1886ին Հայերը 62 տուն էին:

Յոյները ունէին գեղեցիկ եկեղեցի մը Ս. Գէորգ անունով, և դպրոց մը ուր միայն երեք ամիս գիւղին քահանան ուսում կու տար տղոց: Գարան Էօրէն կը բաղկանար երկու թաղէ, Հայոց և Յունաց:

ՀԱՅԵՐԸ.

Հայերու այս գիւղին մէջ հաստատութիւնը շատ հին պէտք չէ ըլլայ, վասնզի 1765ին ո՛չ Սիմէոն կաթողիկոս և ո՛չ Երեմիա դպիր զայն չեն յիշեր:

Երբեմն այս գիւղը հայախօս էր, սակայն յետոյ թրքախօս դարձաւ շնորհունակ քահանայի մը պատճառաւ որ «Ինճէ-Սուէն թրքախօս տիրացու մը կը հրաւիրէ քահանայութեան»: Այս Աստուծոյ մարդը հայերէն չհասկնալուն համար շատ կը նեղուի եւ օրին մէկը պատարագէն ետք սուրբ սեղանէն կը կարկառէ Սուրբ Խաչն ու Աւետարանը եւ կ'անիծէ ժողովուրդի խօսած հին-տէլին եւ յետ այնու գործածել յանդգնողները բանադրելով կը յանձնէ Աստուծոյ արդար դատաստանին: Այդ վայրկեանէն Գարան Էօրէնցին հրաժեշտ կու տայ իր մայրենի լեզուին եւ Աստուծոյ մարդուն անէծքէն վախնալով կ'սկսի անոր հասկցած լեզուն գործածել» (Արիս Գալֆայեան, Չօմախլու, էջ 19): Հետեւաբար իրենց թրքախօս դառնալը նոր բան էր և գիւղին հնութեան նշանը չէր:

ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

Ս. Աստուածածին անուն եկեղեցի մը ունէին, տգեղ և հնաշէն:

Իսկ դպրոցը՝ երկար ատեն եռամսեայ ձմեռնային դասընթացքով և գիւղի քահանային վարժապետութեամբ հաստատութիւն մըն էր: 1872–73 թուականներուն իբր թէ ան ունէր 30 մանուկներով և 700 ղրշ. տարեկան ծախքով անանուն վարժարան մը: Յետոյ վարժարանը կոչուեցաւ Սմբատեան և ունէր 30 մանչ աշակերտ և մէկ ուսուցիչ և 25 ղրշ. ամսական ծախք՝ եկեղեցիէն վճարուած (1901) սակայն ո՛չ շէնք և ո՛չ կանոնաւորութիւն կար:

1906ին Ամերիկայի մէջ Էվէրէկի կրթական գործին նպաստելու համար կազմուած Մեսրոպեան ընկերութեան ներկայացուցիչի հանգամանքով՝ Յ. Արզումանեան երբ հոն կ'այցելէ 1908ին, կը տեսնէ թէ դպրոց չունին: Հետեւաբար ձեռնարկ մը կ'ընէ դպրոցը բանալու համար սակայն կը ձախողի: Քիչ յետոյ Մեսրոպեան ընկերութեան ձեռնտուութեամբ սենեակի մը մէջ կը բացուի դպրոցը 90 երկսեռ աշակերտով և տարեկան 5 ոսկի ծախքով:

1914ին կը ձեռնարկեն յատուկ դպրոցական շէնքի մը շինութեան որ սակայն չսկսած ընդհ. պատերազմը կը պայթի և ամէն ինչ կը խանգարուի (Յ. Արզումանեան, Պատմ. Էվէրէկի, էջ 39–42):

ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Գարան Էօրէնցիք առ հասարակ կ'զբաղէին երկրագործութեամբ և փոքր մաս մըն ալ խաշնարածութեամբ: Աղքատ ժողովուրդ մըն էին:



1915Ի ԱՂԷՏԸ.

Գարան-Էօրէնի Հայերը մեծ մասամբ նահատակուած են տարագրութեան ընթացքին, ինչպէս նաև իրենց միակ քահանան՝ Յովհաննէս քհ. Թովմայեան(1) (Թէոդիկ, Գողգոթա):

XXIV

# ՄՈՒՍԱ-ՀԱՃԸԼԸ ԿԱՄ ՄԸՍԱՀԱՃԸԼԸ

Գարան-Էօրէնէն 1.30-2 ժամ դէպի հարաւ թրքախօս զուտ Հայ բնակչութեամբ գիւղ մըն էր որուն բնակիչները Գարան-Էօրէնէն բաժնուելով 35 տարի առաջ հոն հիմնած են այդ գիւղը, ինչպէս նաև մէկ ժամ հեռու Էյլէզլի գիւղը, որուն հետ հաշուելով 34 տունուոր էին 1880ական թուականներուն, սակայն յետոյ արձանագրուած կը տեսնենք որ միայն Մուսա Հաճըլը ունէր 80 տուն բնակիչ՝ 40ը Հայ և 40ը Յոյն:

Գիւղը գտնուելով լիճերով շրջապատուած վայրի մը, շնորհիւ դաշտին և լիճերուն բաւական տնտեսական բարւոք վիճակ մը ունէր:

Կ'արտադրէր ցորեն, գարի, հաճար (ճօն):

Երկրագործութենէն զատ բնակիչները կ'զբաղէին խաշնարածութեամբ: Առհասարակ կը պահէին կով ու գոմէշ:

Տակաւին կազմակերպուիլ և հիմնաւորուիլ նոր սկսած այս գիւղին մէջ հազիւ թէ կրցած էին շինել աղօթարան մը անանուն, ուր տարագրութեան պահուն կը պաշտօնավարէր Ղուկաս քհ. Քէշիշեան(2), որ կը նահատակուի աքսորի ճամբուն վրայ:

XXV

# ԷՅԼԷԶԼԻ

Մուսա-Հաճըլըէն 1 ժամ հեռու, և անոր պէս մասամբ տեղափոխուող Գարան-Էօրէնցի Հայերէն հիմնուած գիւղ մը, սակաւաթիւ հայութեամբ, որոնք կ'ապրէին 30 տուն Թուրքերու հետ այս գիւղին մէջ: Ոչ եկեղեցի, ոչ դպրոց, ոչ քահանայ և ոչ ալ ուսուցիչ ունէին: Գիւղը թրքախօս էր:

Գիւղացիք կը պարապէին երկրագործութեամբ և անասնապահութեամբ, բուծանելով ձի, կով, գոմէշ:

---

(1) Ծնած է 1880ին Չօմախլը. աշխարհական անունով Արշակ: Ուսած էր իր ծննդավայրին մէջ: 1908ին ձեռնադրուած էր Տրդատ եպ.էն նոյն գիւղին վրայ: Յ. Արզումանեան (էջ 42) կը կարծէ թէ մինչև մօտ օրերս ողջ էր, սակայն կը կասկածիմ:

(2) Ծնած է 1870ին Ֆէնէսէ: Աշխարհական անունով Սարգիս: Թոմարզայի վանքին մէջ ուսած է: Փոքրաւոր Կարապետ վրդ. Շահինեանի: Ձեռնադրուած 1911ին Եօզղաթի Առ. Խորէն եպ. Դիմաքսեանէ Մուսա-Հաճըլըի եկեղեցւոյն վրայ:

Գ.

## ԿԻԶԻՍՏՐԱՅԻ ԿԱՄ ԿԷՕՍԹԷՐԷԻ ՇՐՋԱՆԱԿ

Այսր և Անդր Արգէոսեան շրջանակներէն անջատօրէն, իր առանձնայատուկ նկարագրով և տեղագրութեամբ կը ներկայանայ Կիզիստրայի կամ Կէօսթէրէի շրջանակը, որուն կեդրոնն էր երբեմն Հաճըն քաղաքը, իսկ անոր Ատանայի կուսակալութեան կցուելէն յետոյ Թոմարզան։

Այս շրջանակին մէջ կը գտնուէին Թոմարզա քաղաքէն զատ, Ճիւճիւն, Եէնիճէ, Եաղտը Պուրուն, Ղազլը Կոմէտի, Թաշխան, Սէօգիւտլիւ և Սաչախ Հայաբնակ գիւղերը, որոնցմէ վերջին երեքը գտնուելով Անդր Արգէոսեան շրջանակին և Կէօսթէրէի միջեւ, ոմանք առաջնոյն մաս համարած են, սակայն ես նկատելով անոնց առընչակցութիւնը այս շրջանակին հետ, կցեցի այս շրջանին։

XXVI

# ԹՈՄԱՐԶԱ ԿԱՄ ՏՈՒՄԱՐԶԱ

ՎԱՅՐ, ԴԻՐՔ ԵՒ ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

Կէօսթէրէ նահիյէին կեդրոնը համարուած այս աւանը կը գտնուէր կուսակալութեան կեդրոնէն՝ Կեսարիայէն 8 ժամ հեռու, արտերով և մարգագետիններով ծածկուած ընդարձակ դաշտի մը մէջ



ԹՈՄԱՐԶԱ
(Լուսանկարուած Վարի թաղի կողմէն)



քառանկիւն դիրքով։ Գիւղաքաղաքը չորս կողմը 5-6 մղոն մշակելի հող ունէր, սակայն դժբախտաբար այդ հողը արգասաբեր չէր, վասնզի ոռոգուած չէր գետերով։ Գարնան երեք ամիսները միայն Արգէոսէն գետ մը կու գար ջաղացքները դարձնելու չափ ուժով և անկէ յետոյ կը ցամքէր։ Այնպէս որ գիւղացիք իրենց տարեկան ալիւրը այս ամիսներուն աղալու պարտաւորուած էին։

Դաշտին արեւելեան կողմը կը կանգնէր Սարաճուխ և հարաւային՝ Սիւմէնկէն լեռները որոնց կողերը կը հանդիսանային արօտավայրեր, ուր ամառը իբր եայլա կը տանէին Թոմարզացիք իրենց ոչխարները։

Այս լեռները կը հայթայթէին նաև Թոմարզայի վառելափայտը։

Երկրագործութեան և անասնապահութեան համար իր ներկայացուցած յարմարութիւններու պատճառով արդարեւ հոն բնակչութեան զբաղումներն եղած էին անասնաբուծութիւնը և երկրագործութիւնը։ Իր արտադրութիւններն էին ճօն (հաճար), ցորեն, գարի. իր մեղրը լաւագոյնն էր։ Իր առեւտուրին գլխաւոր նիւթերն էին նաև արջառները, մորթերը և գազի խէժը։

Թոմարզա, որ շրջանակին կեդրոնն էր, մօտաւորապէս 1000 տուներէ բաղկացեալ գիւղաքաղաք մըն էր, ուր կը նստէր միւտիրը, և իրեն չուրջ բոլորը ունէր 32 Թուրք և 300 Աւշար գիւղեր։

Կլիման չոր և բարեխառն էր։ Օդը առողջարար և ջուրը՝ պատուական, թէև հորի և ջրամբարի։

Տուները քարաշէն են և ընդհանրապէս անշուք և միայարկ, աւելի հիւղակներ քան թէ տուներ, զետեղուած նեղ փողոցներու վրայ։

Քաղաքին ամէնէն ներկայանալի մասն էր շուկան, լայն և ընդարձակ և ունէր 91 խանութներ։

Թուրքերը հոն ունէին մզկիթ մը և դպրոց մը։ Հայերն ալ ունէին փառաւոր եկեղեցի մը և համեստ դպրոց մը։

ԱՆՑԵԱԼ.

Հաւանօրէն Թոմարզա հիմնուած է Բիւզանդական շրջանին հոն գտնուած հին քաղաքի մը տեղւոյն վրայ կամ հին կործանած քաղաքի մը մօտ, որ ոմանք ինչպէս տեսնուեցաւ (վերը 426) Ծամնդաւին կամ Ծամնտոսին հետ կը նոյնացնեն։

Ոմանք այս գիւղին հիմնարկութիւնը մինչև կռապաշտական ժամանակներու կը հանեն, սակայն հաստատուն փաստ մը չկայ։ Միայն անտարակուսելի է որ հոն գտնուած է հին առեն քաղաք, գիւղ, կամ բերդ մը։ Թորոս Մատաղճեան կ'ըսէ թէ «Թոմարզայի նախկին վիճակը աւերակ բերդաքաղաք մը կը ներկայացնէր, ինչպէս Հայկի բերդաւերիները զայս կ'ապացուցանեն» (Յարգանք Տասնամեակին, էջ 10)։

Ասկէ զատ, Թոմարզայի չուրջը հնութեան վերաբերեալ բաւական հետաքրքրական բեկորներ կային որոնք նոյնը կը հաստատէին։ Ասոնց ամէնէն նշանաւորն էր գերեզմանատան մէջ գտնուող չէնքը որ Հռոմէական կիրով և չեչաքարով շինուած կանգուն կը մնար։ Շինութեան ձեւը, դիրքը, դրան վրայի գազաններու պատկերները, ենթադրել կու տան թէ Հռոմէական ճարտարապետութեան բեկորներէն մնացած կտոր մըն է, ինչ որ բաւական հնութիւն կու տայ Թոմարզայի որ յունական անուն մը ածանցուած կը համարուի (հմմտ. Գր. Թ. Խորէնեան, Մանզումէի Էֆքեար, թ. 1320, 1905 Հոկտ. 25)։

Աւանին արեւմտեան եզերքը նոյնպէս կը տեսնուէր կիսակործան յոյն եկեղեցիի մը աւերակը (Բնաշխարհիկ Բառարան) որուն հաւանօրէն կ'ակնարկէր Մոլթքէ Նոյեմ. 1838ին իր այցելութեան առթիւ գրելով թէ «Քաղաքին առջեւ կ'երեւին բիւզանդական գեղեցիկ եկեղեցիի մը աւերակները, զոր Թուրքերը քանդեր են»:

Տրդատ եպ. Պալեան եւս կը խօսի հին եկեղեցիի մը շէնքին մասին որ գիւղէն հինգ վայրկեան հեռու էր։ Հաւանօրէն միեւնոյն եկեղեցին պիտի ըլլայ, սակայն հետաքրքրական է որ Տրդատ եպ. կը յարէ թէ այդ եկեղեցին է «յանուն Ս. Աստուածածնայ, ...է ի ձեռս մեր եւ որուն վերին երեսը շուրջանակի արձանագրութիւնք կան, լատինական տառերով եւ լեզուաւ» (տես Ցուցակ Հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, էջ 65)։ Եթէ ճիշդ են Տրդատ եպ.ի տեղեկութիւնները, այս եկեղեցին կ'ըլլայ լատինական իր ծագումով և կ'ստանայ տարբեր կարեւորութիւն մը։




ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

Մօտաւորապէս հարիւր տարիներ առաջ այդ կողմերէն անցնող Անգլիացի ճամբորդ մը կը գրէր թէ «Թոմարզան կը բաղկանար 400 տունէ որուն երեք հարիւրը Հայեր էին եւ միայն հարիւրը Թուրքեր» (ԿՈՉՆԱԿ ՀԱՅԱՍՏԱՆԻ, 1934, էջ 317)։

ԺԹ. դարուն վերջը անիկա աւելի քան կրկնապատկուած էր վասնզի 980 տուն էր, որոնցմէ միայն 38ը Թուրք։ Թուրքերը անհամեմատ պակսած և Հայերը՝ գերազանցապէս աճած էին։

Նոյնիսկ եթէ կարելի է հաւատ ընծայել տեսութեան մը որուն համաձայն Թուրքերը շատ վերջերը հոն տեղաւորուած են, կառավարական կարգադրութեամբ, այն ատեն պէտք է եզրակացնել թէ Թուրքերը անգամ մը անհետացած և յետոյ դարձեալ կառավարութեան միջոցաւ հոն եկած են։

Իսկ տեղւոյն հին բնիկներուն՝ Յունաց հետքը չէր մնացած։

Ընդհ. պատերազմի ատեն գիւղը ունէր ապահովաբար 1000 տուն բնակչութիւն, որուն միայն 25ը Թուրք։ Իսկ անձ կը հաշուուէր 14000 (Գ. Յ. Երլանճեան)։

ԹԱՂԱՅԻՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ.

Գրեթէ զուտ հայաբնակ այս գիւղաքաղաքը, ինչպէս Զէյթուն, կը բաժնուէր չորս թաղերու, որոնք էին Վերի Թաղ, Վարի Թաղ, Հայեկ, Մէջի Թաղ կամ Օրթա Թաղ, որոնք ունէին մէկ մէկ իշխան։ Ասոնք իրարու քով գալով կը ներկայացնէին ամբողջ Թոմարզան։ Այս չորս «իշխան»ներէն բաղկացեալ մարմինին իրաւասութեան սահմանէն դուրս չէին գիւղին հետ կապ ունեցող ներքին և արտաքին խնդիրները։ Անոնք գիւղին տէրն ու տիրականն էին։ Իրենց պաշտօնը գրեթէ ժառանգական էր։

Գ. Յակոբ Երլանճեան հիմնուելով 135 տարեկան մեռած Հաճի Գալուստ անուն անձի մը վկայութեան վրայ, կը հաստատէ թէ ժամանակով միայն չորս տուն կառավարութեան տուրք կը վճարէր։ Միւս բնակիչները իրենց բաժինը այդ չորս տուներուն կու տային և անոնք իրենք կը վճարէին ամէնը՝ կառավարութեան։ Այդ չորս տուներն էին, Տէտէեան, Մազաքեան, Թամուզեան և Գալայճեան, որոնք ըստ տեսութեան Գ. Յ. Երլանճեանի հաւանօրէն չորս տարբեր տեղերէ եկած, չորս գաղթականութեանց պէտերն էին։

Զարմանալի է սակայն որ այս թաղերը առանձին եկեղեցի և դպրոց ունենալու ձգտում ցոյց չեն տուած և միայն ունեցած են մէկ եկեղեցի չորս թաղերէն առնուած չորս քահանաներով աւանին ճիշդ մէջտեղը։ Ասիկա նշանակելի իրողութիւն մըն է, հայկական միայնութիւնը աչքի առջեւ ունենալով։

ՀԱՅԵՐՈՒ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ Ի ԹՈՄԱՐԶԱ.

Առանց նկատելու վաղեմի անցեալը ուր հաւանօրէն Թոմարզա կամ իր մօտաւոր շրջակայքը, շինավայրեր եղած են, որոշ է թէ վերջին ժամանակներու Թոմարզան շինուած էր կամ հաստատուած իբր բոլորովին նոր գիւղ մը կամ աւան մը, զուտ հայկական նախաձեռնութեամբ կամ Հայերու ձեռքով։

Իր հիմնարկութիւնը մօտաւորապէս 800 տարիներու հնութիւն մը պէտք է ունենայ ոմանց կարծիքով (Յակոբ Երլանճեան)։

Հայերը՝ Թոմարզա հաստատուած են և անոր մօտը՝ արեւելեան եզրը ձորի մէջ կառուցած են Ս. Աստուածածին նշանաւոր և հոյակապ վանքը, բաւական հին ժամանակներու մէջ։ Այնպէս որ Թոմարզա Կեսարիոյ գաւառին ամէնէն հին հայաբնակ շրջաններէն մին է։

Աւանդութեան մը համաձայն, որ իբր թէ Սիսի վանքին մէջ պահուած և Թոմարզա գրչագրուած մագաղաթեայ երկու Աւետարաններ ու յիշատակարաններ ալ կը հաստատէին, ԺԲ. դարուն կիսուն կամ աւելի առաջ՝ Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին տեղը կը գտնուէր փոքրիկ մատուռ մը, ուր մի քանի Աբեղաներ՝ կը գրչագրէին ձեռագիրներ և այս պատճառով անոնք կը կոչուէին «Տօմարծի» այսինքն գիրք շինող (Յարգանք Տանամեակին, 1919, Տիքակոյ, էջ 10 և Յակոբ Երլանճեանի ձեռագիր)։

Յետոյ իբր թէ «Տօմարծի»ն կը փոխուէր Թոմարզայի, և ապէ ծնունդ կ'առնէր իր անունը։

Պ. Յակոբ Երլանեան կ'ըսէ թէ Թոմարզա անունը առնուած է Թամզարայէն (Շապին Գարա-Հիսարի մօտ) ուրկէ իբր թէ գաղթած էին մասամբ Թոմարզայի հիմնադիրները (տես նաև Թորոս Մատաղեան, Յարգանք Տասնամեակին, էջ 10)։ Իսկ բոլորովին արժէքէ զուրկ է ոմանց այն ենթադրութիւնը թէ Թոմարզա անունը աղաւաղեալը կը համարէ «Թովմա Արծրունւոյ Աւան» բացատրութեան և անոր հիմնադիրը կը դարձնէ «Թովմա Արծրունին» կամ այդ անունով ուրիշ անձ մը, որ իբր թէ Սենեքերիմեան կամ Գագիկեան շրջանին եկած հիմնած է գիւղը (Բնաշխարհիկ Բառարան)։

Թորոս Մատաղեան (նոյն) կը կարծէ թէ Թոմարզա հաստատուած է Սելջուկ և Թաթար արշաւանքներու շրջանին Թոմարզայի հիւսիսակողմը գտնուած՝ աւերուած դիրքին վրայէն և հիւսիսային արեւմըտեան կողմը գտնուած Պէլէսիմոն գիւղէն, ինչպէս նաև հեռաւոր երկիրներէ՝ մասնաւորապէս Թամարզայէն, Ակնէն և Կիլիկիայէն եկած գաղթականներով։ Պ. Յակոբ Երլանեան կ'ըսէ թէ ըստ աւանդութեան Թոմարզայի հիմնադիրներն էին Ակնէն եկած քանի մը տուն Հայեր, որոնց յետոյ եկած միացած են երկու մերձակայ աւաններու մէջ հաստատուած Հայեր և ամէնքն մէկ կազմած են Թոմարզան։

Ամէն տարակոյսէ դուրս է թէ առնուազն ԺԲ. դարուն Թոմարզա հայաբնակ վայր մըն էր, վասնզի 1206էն (ԺԳ. դարուն սկիզբը) սկըսեալ հոն գրչագրուած ձեռագիրներ կը տեսնենք։

Արդ, քանի որ ԺԲ. դարուն հոն Հայեր կային, պատճառ մը չկայ ժխտելու Թոմարզայի ԺԱ. դարուն հիմնուած ըլլալու ենթադրութիւնը, վասնզի ԺԲ. դարուն Հայերը բաւական առենէ ի վեր տեղաւորուած պէտք էին ըլլալ որպէսզի կարենային ԺԳ. դարուն սկիզբը մտաւորական շարժման մասնակցիլ։

Միայն այս պարագային ժխտելի կը դառնայ անոնց Ակնէն գաղթած ըլլալը, վասնզի Ակն ալ այդ թուականներուն հաստատուած էր։ Բայց որովհետև կ'ըսուի թէ բարբառի, հագուստի, կերակուրի, խաղերու մեծ նմանութիւններ կան Ակնցւոց և Թոմարզացիներու միջև (ըստ Յ. Երլանեանի) կարելի է հետեւցնել թէ Թոմարզացիք ալ անկէ եկած են ուրկէ եկած են Ակնցիք. այսինքն Վասպուրականէն, հաւանօրէն Սենեքերիմ Արծրունիի հետ։

Նախապէս շատ սակաւաթիւ, հետզհետէ աւելի շատցած են։

Իրենց հետ կամ յետոյ հիմնուած գիւղեր են անոնք որոնց կ'ակնարկէ Պ. Յ. Երլանեան։ Ասոնց բնակիչները շրջակայքի անապահովութեան բերմամբ կ'երեւայ թէ ժամանակի ընթացքին, կեդրոնացած են Թոմարզայի մէջ, ուր խտացած են շրջանին Հայերը, որոնք հաւանօրէն ժամանակին շատ աւելի տարածուն վիճակ մը՝ և շատ աւելի բազմաթիւ շինավայրեր ունէին։

Երկու գլխաւոր աւանները՝ որոնց բնակիչները ըստ Պ. Յ. Երլանեանի Թոմարզա ապաստանած են,

1. Պելէսիմոն՝ ըստ Հայոց և Սարը Մէհէմէթլի ըստ Թրքաց կոչուած աւանը, որուն բնակիչներուն մէկ մասը Թոմարզա գաղթած և մէկ մասն ալ՝ ճիւճիւն, և այսպէս վերջ գտած է այս գիւղը, որ ինչպէս



կ'երեւայ վերջին թուականներուն ալ դեռ հայաբնակ էր և Թոմարզայի հիմնարկութեան թուականներուն չէ որ Հայերէն դատարկուած է, եթէ ճիշդ է Պ. Յ. Երլանեանի այն հաւաստումը թէ Թոմարզայի վանքը կար կոնդակ մը 230 տարուան հնութեամբ էջմիածնի կաթողիկոսէն ուղղուած Առ Ղուկաս վարդապետ Առաջնորդ Պելէսիմոնի։ Այս պարագային ինչպէս կը տեսնուի մինչև ԺԸ. դար ուրեմն գոյութիւն ունէր Պելէսիմոն։

Պ. Երլանեան կ'ըսէ թէ «մեր ժամանակին ծեր կին մը կար զոր Տուեղապը կը կոչէին, Չիրքինեաններու աղջիկն էր։ Անիկա ծնած էր Պելէսիմոն, Չիրքինեանները այդ տեղէն եկած էին»։ Եթէ ճիշդ է ասիկա ըսել է Պելէսիմոն նոյնիսկ մինչև ԺԹ. դար կը պահէր իր գոյութիւնը։

2. Գերզովրու կամ Գիրզովր կամ Գրիզորիս, որուն յիշատակութիւնը արդէն ըրած եմ (տես վերը 640), կը գտնուէր Թոմարզայի արեւելեան կողմը մէկ ժամու չափ հեռու, դաշտի մը վրայ։

Այս գիւղին մէջ կայ եղեր վանք մըն ալ յանուն «Հայր Աբրահամի» այժմ անհետացած։ Այս գիւղը վաղուց ամայացած է և գիւղացիք Թոմարզա հաստատուած են ըստ Տրդատ եպ. Պալեանի (Հայ վանօրայք, էջ 98)։ Հաւանօրէն մինչև ԺԸ. դար իր գոյութիւնը կը պահէր։ Պ. Երլանեան կը հաւաստէ թէ Թամուզեան ընտանիքը անկէ փոխադրուած էր։

Ես այս երկու գիւղերուն վրայ կ'աւելցնեմ նաև

3. Ձիւոյի գիւղը որ ԺԶ. դարուն (1532) յիշուած է ինչպէս տեսնըւեցաւ (վերը 639), տեղը այսօր անյայտ՝ սակայն շատ հաւանական է որ Թոմարզայի շրջանակին մէջ էր, քանի որ նշանակուած է «ի գաւառիս Ծամընդայ», և գիտենք թէ աւանդաբար Ծամընդաւը կը նոյնացնէին Թոմարզայի հետ։

Այս գիւղը ունէր Ս. Սիոն անուն եկեղեցի մը։ Հաւանական է ենթադրել թէ այս գիւղացիք ալ Թոմարզա ամփոփուած են։

4. Ղազրնա, որ նոյնպէս Հայ գիւղ մը կը թուի ըլլալ Թոմարզայի շրջանակին մէջ իր յատուկ եկեղեցիով։ Ասիկա յիշուած կը գտնենք 1630ին գրուած Աւետարանի մը, Բ. յիշատակարանին մէջ ուր կը տեսնենք թէ Նարվուզ անուն անձ մը Թոմարզայի մէջ գրուած այս Աւետարանը կը գնէ և կու տայ «ի Ծամուտնէ ի գիւղն Խազրնա, ի դուռն Ս. եկեղեցւոյն» (Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի, Ա. հտ. էջ 778)։

Հաւանօրէն այս Բ. յիշատակարանը ժամանակով 1630էն շատ վերջն էր, ուստի Խազրնա ևս մինչև ԺԸ. դար իր գոյութիւնը կը պահէր և յետոյ դադրած էր հայաբնակ ըլլալէ։

Այս գիւղերէն զատ Պ. Յ. Երլանեան կը յիշատակէ, Թոմարզայի շուրջը, հայանուն ճամբայ, ձոր, լեռ, գիւղ, որոնք ցոյց կու տան թէ հայկական յիշատակներ որքան առատ էին այս շրջանին մէջ։ Այսպէս ժողովուրդին բերնին մէջ ի գործածութեան էին Քարձոր, Արքէձորակ, Ջախուղին, Մարմախոր, Ոձեղի ձոր, Խաչ աղբիւր, Երկան խոզ, Կոսղա լեռ, Գոմեր(1) հայկական կոչումները, որոնցմով կը ճանչնային անոնք զանազան վայրեր, ապացուցանելով թէ այս շրջանակը երբեմն եղած էր իսկապէս խոշոր հայաբնակութեան մը բնակավայրը։

(1) Գոմեր՝ Թոմարզայի մօտ Թուրք գիւղ մըն էր, հաւանօրէն երբեմն հայաբնակ։

### ԿՐՕՆԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ.

*Թոմարզա առնուազն ութը դարեր ապրած է, զուտ Հայ կեանք մը, պինդ փարումով մը իր եկեղեցիին որմէ երբեք բաժնուող մը չէ եղած։ Այնպէս որ կաթոլիկ և բողոքական քարոզութիւնները չեն յաջողած և կաթոլիկութեան ու բողոքականութեան յարող ոչ մէկ Թոմարզացի գտնուած է։*

### ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

*Թոմարզա իր պատմական և իրեն չափ հին Ս. Աստուածածին վանքէն զատ, գրեթէ անոր չափ հին ունեցած է եկեղեցի մը* Ս. Պօղոս Պետրոս *անունով որուն յիշատակութեան կը հանդիպինք սկսեալ* 1570 *թուականէն բազմաթիւ ձեռագիրներու մէջ, գրեթէ անընդմիջաբար։*

*Անկարելի է որ այս դարաւոր եկեղեցին իր նախնական կառուցումով մնացած ըլլար մինչև վերջը։ Ապահովաբար* 7–8 *հարիւր տարիներու ընթացքին քանի մը անգամ նորոգուած կամ ի հիմանէ վերաշինուած պէտք է ըլլայ։*

*Թորոս Մատաղճեան* (*նոյն*, *էջ* 13) *կ'ըսէ թէ նախապէս փոքր մատուռ մըն էր և* 1837 *թուականին վերածուած՝ հոյակապ տաճարի մը, Թոմարզացիներու նիւթական և ֆիզիքական զոհողութեամբ, առանց դուրսէն ոեւէ օգնութեան։ Արդարև այս իրողութիւնը կը հաստատուի ժամանակակից ականատեսներու վկայութեամբ։ Վերոգրեալ անգլիացի ճամբորդը որ մօտաւորապէս հարիւր տարի առաջ Թոմարզայէն անցած էր կ'ըսէր թէ Հայերը* «ունէին հին եկեղեցի մը եւ վանք մը: Եկեղեցին իր աւերակ վիճակով կը պատմէր իր հնութիւնը (ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ, 1934, *էջ* 317), *մինչ Մոլթքէ* 1838 *Նոյեմբերին իր նամակին մէջ կը գրէ թէ* «Քաղաքին մէջ յաղթապանծ կը բարձրանայ նոր եկեղեցի մը զոր անցեալ տարի շինեց լմնցուց Հայոց եպիսկոպոսը, որ մինչեւ իսկ փոքրիկ զանգակ մըն ալ կրցաւ կախել» (ԲԻՒԶԱՆԴԻՈՆ», թ. 3994):

*Ան հաստատուն, քարաշէն հոյակապ շէնք մըն էր, որ կրնար պարփակել իր մէջ* 2500 *ժողովուրդ։ Զորս սիւներու վրայ հաստատուած էին կամարները։ Իսկ սեղանը գեղարուեստական նշանակելի կազմուածք մը ունէր։* 1911*ին այս եկեղեցիին տանիքը գմբեթ մը և զանգակատուն մը շինուած էր։*

*Թոմարզա* 1576–1588 *թուականներուն ունեցած է նաև ուրիշ եկեղեցի մը* **«Ս. Սարգիս զօրավարին»** *նուիրուած, ինչպէս կը յիշատակեն երկու ձեռագիրներ, սակայն այս մասին ուրիշ տեղեկութիւն մը չկայ դժբախտաբար։*

*Եկեղեցիին հետ, անոր շինութեան ժամանակ* 1837*ին կառուցուած է Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիին կից նաև* Թորգոմեան վարժարանը:

*Թոմարզացիք կրթական գործին կարեւորութիւն տուած են և իրենց վարժարանները մասնաւորապէս հին ատեն, շրջանին լաւագոյն կրթական հաստատութիւնները եղած են որոնցմէ բաւական նշանակելի թուով կարեւոր անհատներ դուրս եկած են։*

*Թորգոմեան վարժարանի ծախքը կը հոգացուէր եկեղեցւոյ գանձէն և «իշխան»ներէն (թաղականներէն)։ Այդ ծախքը հազիւ* 15 *ոսկի էր։*

*Վանքն ալ ունէր իր սեփական դպրոցը, որ վանքի ընդարձակ սենեակներէն մէկն էր, ուր մասնաւորներու յատուկ լինելով միայն կը յաճախէին* 15–20 *երիտասարդներ, մաս մը հարուստներէն և մաս մըն ալ անօգնական յառաջադէմ որբերէն։ Ունէր ուսուցիչ մը կամ կարող վարդապետ մը ուսուցչի պաշտօն կը կատարէր։ Ծախքը վանքին հասոյթներէն կը հոգացուէր և կը կառավարուէր վանքին վանահայր վարդապետին տնօրէնութեամբ։*



*Այս դպրոցը կրօնական հաստատութիւն մը ըլլալով, կառավարական հսկողութենէ զերծ մնացած և կրցած է խոստմնալից և բաւականին յառաջադէմ ու ուսեալ աշակերտներ տալ։ Այս դպրոցին շնորհիւ Թոմարզա պատրաստած է թէ իրեն և թէ շրջակայ Հայ գիւղերուն համար ուսուցիչներ, ինչպէս նաև քահանաներ և վարդապետներ, Կեսարիոյ թեմերուն և շրջակայ վանքերուն համար։*

*Իսկ քաղաքին դպրոցը ունեցած է սոսկ նախակրթարանի մը հանգամանքը և ենթարկուած է զանազան ելեւէջներու։ Երբեմն ան մատնուած է խիստ անշքացման, ինչպէս օրինակ* 1872–1873 *թուականներուն երբ հազիւ դպրոց յիշեցնող բան մըն էր ուր* 150 *մանուկներ պարզ ընթերցում մը կ'ուսանէին ժողովուրդէն հայթայթուած* 2880 *ղրշ. տարեկան ծախքով։*

1901*ին վարժարանը ունէր* 280 *միայն մանչ աշակերտներ, չորս ուսուցիչներով և* 175 *ղրշ. ամսական ճղճիմ ծախքով մը որ եկեղեցիին սնտուկէն կը հոգացուէր, մինչ աւելի առաջ այդ վարժարանը կը յաճախէին* 620 *աշակերտներ և ունէր* 50 *ոսկի տարեկան ծախք որ կը հայթայթուէր այլեւայլ նուիրատուութիւններով* (Բնաշխարհիկ Բառարան):

*Հետեւաբար կրթական վիճակը գիւղին շատ անկեալ էր վերջին ժամանակները, հակառակ իր երբեմնի փայլին։ Պարզ-կարդալ հազիւ կը սորվեցնէին և երբեմն մէկ կամ երկու վարժապետ կ'ունենային որոնց տարեթոշակը* 4 *ոսկիէն անդին չէր անցներ։ Դպրոցին տէրը և տիրականն էր թաղականութիւնը։*

1909*ին քանի մը կուսակցական երիտասարդներու բողոքին վրայ երկար ատեն անդրդուելի մնալէ յետոյ, վերջապէս Թաղ. Խորհուրդը տեղի տուաւ, և որոշուեցաւ չորս թաղերէն մէկ մէկ անձ առնելով կազմել Հոգաբարձութիւն մը։ Այսպէս կազմուեցաւ Յակոբ Երլանճեանէ* (*Վերի թաղէն*), *Կարապետ Սալպաշեանէ* (*Վարի թաղէն*), *Թորոս Ալթըբարմագեան-Գարտաշեանէ* (*Հայեկէն*), *Սարգիս Քէչէճեանէ* (*Օրթա կամ Ձոր թաղէն*) *բաղկացած մարմին մը, որ շինեց դասարաններ, վարձեց* 5 *դասատուներ, տնօրէն մը* (*Յակոբ քհ. Պօյաճեան*) *և արդիականացուց դպրոցը, զայն հանելով իր մինչև այն ատեն ունեցած Տէր Թոդիկեան դրութենէն։*

*Այս առթիւ դպրոցին անունը փոխուեցաւ* Սահակեան վարժարանի:

1910*ին Թաղ. Խորհուրդը կը նորոգէ եկեղեցին, միեւնոյն ատեն եկեղեցիին սեփական ձիթահանը արդիւնաբեր կալուածի կը վերածէ և հնօրեայ դրութեամբ վարուած դպրոցը լաւ վիճակի մէջ կը դնէ և մանաւանդ կը բանայ աղջիկներու դպրոց մը, ընդհանուր ծախքը* 220 *օսմ. ոսկիի բարձրացնելով, ութ հատ գոլէճէ աւարտական և ֆրանսերէնի կատարեալ հմուտ և կարող ուսուցիչներ բերելով* (Յարգանք տասնամեակին, *էջ* 45–46)։ *Իսկ ծախքը կը հոգացուէր ոչ միայն եկեղեցւոյ սնտուկէն այլ նաև թոշակներէ։*

*Թոմարզայի Սահակեան վարժարանին իր կարեւոր նպաստը բե-*

րած է «Թոմարզայի Ազգային Սահակեան վարժարանի Ուսումնասիրաց Ընկերութիւնը» որ 1909 Մարտ 1ին կազմուած ի Ամերիկա Րէյսին քաղաքին մէջ Թոմարզացի գաղթականներէ։

1910ին երբ անդամներուն թիւը 150ի հասաւ, այս ընկերութիւնը կարեւոր գումար մը ղրկեց որպէսզի յարմար դպրոց մը շինուի։ Այս նպատակով հող մըն ալ կը գնուի, սակայն վերահաս պատերազմին աղէտը պատճառ կ'ըլլայ որ անիկա չիրագործուի։

Եւ այսպէս յառաջդիմութեան և զարգացման և մանաւանդ բարգաւաճման ճամբուն վրայ էին Թոմարզացիք երբ Ընդհ. պատերազմը վրայ հասաւ և Թոմարզա եւս զոհ գնաց Թրքական վայրագութեան։

## ՀԱՅՈՑ ԿԵԱՆՔԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

Թոմարզացիք չափազանց աւանդապահ ժողովուրդ մը եղած են։ Նախնեաց աւանդութիւնները և սովորութիւնները՝ ամուր պահպանած են։ Անոնք հին ժամանակներու սովորութեան համաձայն օրը երկու անգամ, առտու և իրիկուն անպատճառ եկեղեցի պիտի երթային։ Ինչպէս որ պինդ փարած էին իրենց կրօնքին, նոյնպէս նաև ամուր պահած էին իրենց լեզուն, թէև աղաւաղուած։

Ուշագրաւ է որ երկրագործական գործիքներու, տան կարասիներու, ուտելիքներու և վերջապէս հագուստ կապուստներու անուանները, միշտ հայերէն կը գործածէին։

Թոմարզացւոց առտնին կեանքը կատարեալ նահապետական էր։

Ժողովրդեան գլխաւոր զբաղումն էր երկրագործութիւն և անասնաբուծութիւն։

Թոմարզացիք առ հասարակ հողատէր էին։ Իրենց չարքաշութեան շնորհիւ՝ գիւղին ամէն կողմը այգիներու և պարտէզներու շարքերով զարդարուած էր։ Ոմանք կ'զբաղէին նաև խաշնարածութեամբ և այս պատճառով երկու ժամ հեռու՝ Սիւմէնկէն և Սարաճիւղ կ'երթային աւելի օգտագործելու իւղը և բուրդը։ Կային նաև վաճառականներ, որոնք աւելի ճիշդ է կոչել առեւտրականներ, վասնզի աւելի պարզ խանութպաններ էին, որոնք իրենց գործառնութիւնները կը կատարէին Կեսարիոյ հետ, ապրանքը անկէ բերելով։

1907էն յետոյ 1-2 խանութպաններ սկսան ուղղակի Մերսինէն և Պէյրութէն ապրանք բերել և հետզհետէ իրենց գործը ընդարձակել։

Խանութպաններէն 5 անձեր միայն դուրսէն (Կեսարիա և Թալաս) էին, իսկ մնացեալները ամէնքն ալ տեղացի։

Թոմարզա ունէր նաև արհեստաւորներ, մասնաւորապէս ճարտարապետներ, որոնք Կ. Պոլսոյ մէջ ալ համբաւ ունեցած են։ Նոյնպէս Թոմարզացի որմնադիրներ, հիւսներ, կօշկակարներ, ոստայնանկներ, ծեփիչներ և այլ կային։ Անոնք գլխաւորաբար իրենց տեղը կամ շրջակայ գիւղերը աշխատելով ապրուստ կը ճարէին։

Թոմարզա աղքատիկներու գիւղ մըն էր, և առանց չափազանցութեան կարելի է ըսել թէ Թոմարզացիք իրենց «հացը քարէն կը հանէին», վասնզի Թոմարզայի հողը շատ արդիւնաբեր չէր, և այս պատճառով ստիպուած էին չափէն աւելի ծանր աշխատանքի լծուիլ։ Ասով հանդերձ շատ ընտանիքներ հազիւ իրենց տարեկան ապրուստը կրնային ապահովել։ Իւղ, պանիր, իրենց տունէն էր։ Հագուստի մեծ մասն ալ իրենց պահած ոչխարի բուրդէն կը շինէին։ Անոնք 200 ար-



տավայր հող կը մշակէին ամէն տարի և հազիւ կրնային ապրիլ։ Կալոցը, պէտք էր իրենց ալիւրը, ձաւարը, թարխանան, ոսպը և այլ ամբար լեցունէին, տարուան մը բաւելու չափ։ Յաջորդ տարուան սերմնցուն վերցնելէն յետոյ մնացածը հազիւ ձմեռը իրենց ընդակի կերը կը մնար։ Կառավարութեան տուրքին համար բան մը չէր մնար, ուստի ստիպուած էին կամ քանի մը ոչխար ծախելով տալ իրենց տուրքը կամ պարտքի տակ մտնել։

Անոնք որ հողատէր չէին խէժ (փիւս) կը հաւաքէին և 3-4 ոսկի առնելով մէկ տարի կ'ապրէին։

Թոմարզան կը ներկայացնէր կատարեալ աշխատանոց մը ուր այր և կին առանց սեռի տարբերութեան. —կիները թերեւս ա՛լ աւելի—,



ԹՈՄԱՐԶԱՑԻ ՀԱՅ ԸՆՏԱՆԻՔ ՄԸ



ԹՈՄԱՐԶԱՑԻ ՏԱՐԱԶՈՎ ՀԱՅ ԿԻՆ

առտուան արշալոյսէն մինչև իրիկուն ուշ ատեն անդադար կ'աշխատէին, շատերը շատ անգամներ անօթի ծարաւ։

Թոմարզացիք գործունեայ և ժիր մարդիկ են, ու ինչպէս ըսի մեծ մասամբ հողագործութեամբ կ'զբաղէին, սակայն նահապետական դրութեամբ։ Ինչ որ տեսած կամ լսած էին իրենց նախնիքներէն, անոր կառչած էին պինդ աւանդամոլի ամենաբուռն թափով։

Իրենց կիներն ալ իրենց այրերուն հետ հաւասարապէս կ'աշխատէին դաշտին և կալին մէջ։

Նկարագրով «Թոմարզացին ամէն բանէ առաջ վարպետորդի է։ Կեսարացիները «ապալը ֆիրէկ», իսկ Էվէրէկցիները «բընճածները» կ'անուանեն զանոնք։ Նմանօրինակ իմաստ ունին երկուքն ալ ու կը նշանակեն խորամանկ։ Հազիւ անկեղծ խօսք մը կարելի է կորզել իրենցմէ։ Իրենց բառերը միշտ առաձգական են։ Կը սիրեն մարդու քիթէն բռնել բարեկամութիւն կեղծելով։

Զափազանց աւխասաւէր են. աւխատութենէ զատ ուրիշ միջոց չեն գտած ժլատ բնութենէ եւ հարեւաններէ իրենց չորաքեկ հացը կորզելու համար: Շատ քիչ արհեստաւոր կամ առեւտրական ունին: Ընդհանրապէս հողագործ են: Բնութիւնը ժլատ է բայց, գուցէ աւելի ճիշդ պիտի ըլլար ըսել թէ ապերախտ է, վասնզի զարմանալի մասնայատկութիւն մը ունի այդ կողմի հողը. երբ ցորեն ցանես, առաջին տարին կիսովին, իսկ յաջորդ տարին ամբողջութեամբ հաճար(1) կը հասցնէ: Կարծես մշակին քիթին խնդալու տենդն ունի բնութեան այդ հողամասը: Թոմարզացի կինը այնքան չարքաշ է որքան էրիկ մարդը. կը վարէ, կը ցանէ, կը կամնէ, կ'առոգէ իր էրկան հետ բաժնելով ամէն տեսակ աշխատութիւն: Չկայ ծանր աշխատանք մը զոր չբաժնէ իր էրկան հետ: Ցանախադէպ պարագայ մըն է կալին մէջ Թոմարզացի կնոջ որդեծնութիւնը» (*Ձեռագիր Եղիազարեանի*)։

*Թէև իրենց ապրուստի միջոցները շատ խեղճ էին, սակայն անոնք դարձեալ գոհ էին իրենց վիճակէն։*

*Մինչև 1870–75 թուականները Թոմարզացիք երբեք չէին գաղթեր. միայն քիչ թուով Թոմարզացիներ Կ. Պոլիս կ'երթային իբր պանդուխտ։ Անոնք արհեստ մը սորվելով կը վերադառնային։*

*Բայց բնակչութեան հետզհետէ աճումը այդ անցուկ շրջանակին մէջ տնտեսական տագնապ առաջ բերաւ և հետևաբար 1860 ական թուականներուն Թոմարզայէն փոքրիկ մասեր գաղթելով հաստատուեցան աւանին հարաւային կողմը քանի մը ժամ հեռաւորութեան վրայ եղող Սէօյիւտլի, Եէնիճէ, Թաշխան և Կէօմէտի չորս գիւղերը, կոյս և ամայի հողերու վրայ։*

*Սակայն դրութիւնը հետզհետէ աւելի ծանրացաւ։*

*Տաւրոսեան լեռներու մէջ հաստատուած Հաճընի, Զէյթունի և այլ վայրերու պէս Թոմարզա ևս երբեմն տեսակ մը առանձնաշնորհեալ դիրք կը վայելէր, ենթարկուած ըլլալով Աւշար պետերու կամ Գոզանեանց տիրապետութեան։ Օսմ. կայսրութիւնը այս շրջանները ուղղակի իր տիրապետութեան, հազիւ 1855–1860 թուականներուն կրցած է ենթարկել, վերջ տալով Տաւրոսեան շղթային մէջ որջացած բազմաթիւ տէրէպէյութեանց։*

*Այս շրջանին ինչպէս կը տեսնուի Թուրքերը չարաչար կեղեքած են Թոմարզայի Հայերը որոնք թէ՛ կառավարութեան և թէ՛ Աղաներուն տուրք կուտային։ Ուստի, ինչպէս Մոլթքէ պատմած է, ազատելու համար, 1828ին, կ'որոշեն ամբողջութեամբ գաղթել այլուր (տես վերը, էջ 663) սակայն Ս. Աստուածածին վանքին կորովի վանահայրը՝ Բարսեղ Վրդ. Թորոսեան որ ի հարկին գիտէր զէնք ալ գործածել Աւշար աւազակները պատժելու համար, կը յաջողի համոզել ժողովուրդը որ մնան, և տուրքերուն գանձումը իր վրայ կ'առնէ, և այսպէս կը յաջողի առաջքն առնել այս տեղափոխութեան։*

*Անգլիացի ճամբորդ մը որ հարիւր տարի առաջ անկէ անցած է և հոն գտած է* 300 *տուն Հայերու հետ* 100 *տուն Թուրքեր կ'ըսէ թէ* «բուն այս գերակշռութիւնը պատճառ եղած էր, որ այստեղ Թուրքերը հայերէն խօսէին, ինչպէս որ ուրիշ տեղեր փոխարաբիւ Հայերը թուրքերէն կը խօսէին: Թոմարզայի Հայերը ոչ միայն կրցած էին պահել իրենց մայրենի բարբառը, այլ իբր շօշափելի նշան իրենց երբեմնի բարօրութեան եւ անկախու-

(1) Ծոն *կ'ըսեն էվէրէկցիք հաճարին։*



թեան, ունէին հին եկեղեցի մը եւ վանք մը» (ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ, 1934, 317):

*Վանք և եկեղեցի ունենալը անշուշտ ոչ իրենց բարօրութեան և ո՛չ ալ անկախութեան (!!) «շօշափելի նշան» կրնար համարուիլ, սակայն հայերէնին տիրապետութիւնը մէկ աստիճան կրնար ցոյց տալ թէ Թոմարզա թրքական ճնշումէն գոնէ մասամբ հեռու մնացեր էր, շնորհիւ այն հանգամանքին որ շրջակայ լեռնագաւառները իրականին մէջ նուաճուած չէին Թուրք բանակէն։*

*Անգամ մը նուաճուելէն յետոյ Թոմարզայի կեանքը կը խռովէր։*

*Թրքական կեղեքումները՝ աւելի սաստիկ եղած են քան Աւշարներու, Թուրքմէններու և Գոզանեանց սանձարձակութեան շրջաններուն, վասնզի որքան որ Թուրք բանակներ վերջ տուած են տէրէպէյական իշխանութեանց, սակայն Տաւրոսեան լեռնաշղթան միշտ որջ եղած է աւազակներու որոնք չարունակ շրջակայքին համար սպառնալիք մը կազմած են։ Նոյնիսկ մինչև* 1888 *Թոմարզա կը գտնուէր Մէմլուդ օղլու կոչուած աւազակապետի մը սարսափին տակ որ նոյն տարին հազիւ կը նուաճուէր* (Փունջ, *թ.* 2125)։

*Մասնաւորապէս Հայ և Թուրք յարաբերութեանց խանգարուելէն, և* 1895–1896*ի ջարդերէն յետոյ, սկսաւ Թոմարզայի դատարկացումը։*

1896*ի ջարդին միայն մէկ անձ՝ Ղուկաս աղա Թորոսեան Կ. Պոլսոյ ճամբով Ամերիկա կ'ապաստանի։*

1903*ին անոր օրինակին կը հետևին երեք ուրիշ Հայեր, որոնց մինչև* 1908 *Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութիւնը կը հետևին* 15–20 *ուրիշ Թոմարզացիներ։*

1908*ին երբ երթևեկի արգելքը կը վերնայ, արտագաղթը կը մեծնայ և շատեր կը բռնեն Ամերիկայի ճամբան, և կարճ ժամանակի մէջ մօտաւորապէս* 700 *Թոմարզացիներ կը հաստատուին Ամերիկա։*

*Այսպէս արդէն սկսած էր գաղթականութեան որդը կրծել Թոմարզան, որ հետզհետէ կը դատարկանար։*

### ՀԱՅԱԶԻՆՋ ՍԱՐՍԱՓ.

*Հայկական խնդրոյն ծագում առնելէն և Թուրք կառավարութեան հայահալած քաղաքականութիւնը ընդգրկելէն յետոյ Թոմարզայի խաղաղութիւնը վրդովուած և իր առաջդիմութիւնը կասած է։*

1894*ին Հնչակեան մասնաճիւղ մը կը հաստատուի հոն* 22 *անդամներով, ամէնքն ալ երիտասարդ խանութպաններ, որոնք նախապէս ճամբայ ելած էին կազմելու Շահասիրաց ընկերութիւն մը կամ պարզ* քօօբեռատիւ *մը, ամսական* 5 *ղրշ. մասնավճարով։ Ծրագրած էին երբ բաւականաչափ դրամագլուխ ունենային հաւաքական խանութ մը բանալ։ Ասոնք ամէն* 15 *օրը անգամ մը, ժողովներ կ'ունենային։ Հազիւ թէ տարին լրացած էր, երբ ժողովին մէջ մէկը կ'առաջարկէ Շահակցական ընկերութիւնը կուսակցութեան վերածելու։ Խեղճերը չէին գիտեր թէ ի՞նչ է կուսակցութիւնը։ Այն ատեն* Գոմիթէ *կամ* Շիրքէթ *կ'ըսուէր և ընկիւրիւի շռնդալից դատավարութենէն էր որ միայն անոր վրայ անորոշ գաղափար մը ունէին։ Շատեր կը վարանին, սակայն վերջապէս կը համաձայնին, պայմանով որ գաղտնի պահեն մինչև որ հասկնան Գոմիթէին ծրագիրը, որ իրենց բացատրելու համար ընկիւրիւի դատավարութեան մէջ անպարտ արձակուած Թալասցի Սարգիս Վէզիրեանը կը հրաւիրեն ժողովի։*

Յետոյ չփման կը մտնեն Կեսարիոյ մասնաճիւղին հետ, և Էվէրէկէն կ'առնան Հնչակ թերթը։

Առաջին 22ին վրայ կ'աւելնան նաև 40 անդամներ ևս և մինչեւ 1908 Հնչակեան մասնաճիւղ մը 60ի չափ անդամներով իր գոյութիւնը կը պահէ Թոմարզայի մէջ, ուր ոչ մէկ մատնութեան դէպք չի պատահիր։

1895ի կոտորածին Թոմարզայիք մէկ սիրտ մէկ հոգի ինքնապաշտպանութեան կը դիմեն։ Կին, աղջիկ, երիտասարդ, ծեր, վառօդ շինելով, զէնք մաքրելով կ'զբաղին։ 20–30 հազարէ բաղկացեալ Թուրք խուժան մը, Թոմարզայէն 1–2 ժամ հեռաւորութեան վրայ գտնուող լեռները օրերով կ'սպասէ՝ զայն քանդելու փափաքով, սակայն չի յաջողիր վանքի 32 Թուրք գիւղերէն ժողովուած այս խուժանին Թոմարզացիք հերոսավայել դիմադրութիւն մը ցոյց կու տան։ Թուրք գիւղացիները և Աւշարները կը սարսափէին, մասնաւորապէս այն պատճառով որ զրոյց ելած էր թէ Զէյթունցիք եկած Թոմարզա պահուած էին։ Այս սարսափով թէև խուժանը քանի մը անգամ խուժեց բայց առանց կորուստ պատճառելու ետ մղուեցաւ, միայն քանի մը հարիւր ոչխար տանելով գիւղէն դուրս գտնուող քարայրներէն։

1896ին, Էվէրէկի ջարդին առեն ալ Թուրքերը կը խուժեն, սակայն դարձեալ ընդդիմութեան կը հանդիպին և ետ կը մղուին։ Միայն մէկ Թուրք կը մեռնի, ան ալ զինուորներէն սպանուելով, վանքի խուժանին աջակցելու համար զինուոր ալ ղրկուած էր։

Այս առթիւ Թոմարզան Թուրքերը մկրտեցին Քիւչիւք Զէյթուն անունով։ Սակայն Թուրքերը առիկա չկրցան մարսել և անմիջապէս աղերսագիր մը փութացուցին Կեսարիա ըսելով որ «Թոմարզայի կեավուրները իրենց գիւղին մէջ գտնուած 30 տունէ բաղկացեալ Թուրքերը ջարդեցին մզկիթին մէջ, և պատրաստուած են շրջակայ գիւղերուն վրայ քալել՝ քանդելու. Ձեր հրամանին կ'սպասենք»։

Թուրքերը կը յուսային որ ինչ որ իրենք չկրցան կառավարութիւնը իր զինուորական ոյժով պիտի ընէր և իրենց պարտութեան վրէժը լուծած պիտի ըլլային։

Արդարև Կեսարիոյ կառավարիչը անմիջապէս 800 զինուոր կը ղրկէ Թոմարզա, զայն և հեռուն գտնուող Էֆրէկ (=Ջամանտա) Հայ գիւղը հիմնայատակ ընելու հրամանով, սակայն խնդիրը պարզուելով և զրպարտութիւն մը ըլլալը հասկցուելով, առանց ոեւէ վնաս մը հասցնելու, կը հեռանան նոյնիսկ Սէօկիւտլին փրկելով և վարի Թաղեցիներու ոչխարի հօտերը ազատելով։

1901ին ուրիշ տագնապ մը կ'ստեղծուի։ Թուրքերը կ'ուզեն գրաւել եկեղեցիին հանդիպակաց վաղեմի աւերակ խանը և վարի յարկը խանութի իսկ վերնայարկը մէտրէսէի վերածել։

Հաֆըզ անուն Թուրք պետը Էվէրէկի կառավարիչին հովանաւորութեամբ կը յաջողի այդ խանը մզկիթի վերածել, և իրեն հետ ունենալով Թոմարզայի շրջակայ 32 Թուրք գիւղերու ամբողջ ժողովուրդը, կը փորձէ քանիցս խանը քանդելու սակայն Թոմարզայի Հայերը միշտ կ'ընդդիմանան։ Հաֆըզ կը դիմէ Էվէրէկ և դատ կը



բանայ, սակայն Տ. Յակոբ քհ. Պօյաճեան (1), որ մեծապէս հմուտ էր երկրին օրէնքներուն կը յաջողի պապանձեցնել դատաւորներն ու փաստաբանները։

Հաֆըզ այս անգամ Կ. Պոլիս կը դիմէ և հոն կը յաջողի կաշառքի ուժով ձեռք բերել հրովարտակ մը այդ պանդոկը փլցնելու համար։ Հաֆըզ կը հաւաքէ բոլոր շրջակայ գիւղերու երիտասարդները և կը կարգադրէ որ յանկարծական խուժումով մը Թոմարզա մտնեն և քանդեն։ Սակայն Յակոբ քհ. Պօյաճեան 10 ժամ առաջ կ'իմանայ և Թոմարզայի երեւելիները ժողովի կը հրաւիրէ։ Կ'որոշեն Կեսարիա՝ առաջնորդին դիմել։ Տրդատ եպ. Պալեան դիտել տալով թէ ամենափափուկ վայրկեաններու մէջ կ'ապրին, կը խնդրէ որ երբեք խռովութեան տեղի չտրուի, սակայն Տ. Յակոբ քհ. Պօյաճեան ընդհակառակը ժողովուրդը կը խրախուսէ ամէն գինով ընդդիմանալու։

1903 Մարտ 12ի առաւօտուն Թուրքերը տեսնելով որ ամբողջ Թոմարզա ոտքի վրայ է, խոհեմութիւն կը համարեն տեղի տալ և ինչպէս որ գիշերով եկած էին նոյնպէս ալ գիշերով անհետանալ, առանց իրենց ողջը եղող մզկիթէ դուրս ելլելու քաջութիւնը ունենալու։ Իսկ սակաւաթիւ Թուրքերը որոնք այդ քաջութիւնը ունեցած էին փողոցներու մէջ Հայ կիներու յարձակման կ'ենթարկուին։

Հետեւեալ օրը Տրդատ եպ. Պալեան և Կեսարիոյ միւթէսարըֆը կու գան Թոմարզա, խնդիրը կը քննեն, Հայոց իրաւունքը կ'ընդունին և անզօրրութիւնը կը հաստատեն (Յարգանք Տասնամեակի, էջ 21–25)։

Սակայն Թուրքերու դառնութիւնը մեծ եղած էր և առիթի կ'սպասէին վրէժ լուծելու համար։ 1909ին Կիլիկեան եղեռնի պահուն անոնք այդ առիթը գտած ըլլալ կարծեցին, սակայն դարձեալ յուսախաբ եղան։ Կառավարութեան կողմէ ղրկուած 150 զինուորները՝ ներսէն և վայրենի խուժանը՝ դուրսէն օրերով աշխատեցան, Թոմարզան մոխիրի վերածելու համար սակայն դարձեալ չյաջողեցան։

Այդ առիթը ընծայեց Ընդհանուր պատերազմը, երբ Թուրք կառավարութիւնը Հայկական Հարցը փակելու համար Հայերը բնաջնջելու գազանային ծրագիրը յղացաւ և գործադրեց։

Թոմարզա այս անգամ դժբախտաբար ընկճուեցաւ և ինչպէս ուրիշ այնքան հարիւրաւոր քաղաքներ և գիւղեր, հիմնայատակ եղաւ։

Թոմարզայի Նախկին «միւտիր» Ահմէտ Ճէմալէտտին 1915 Փետր. 9ին վերադարձաւ և իսկոյն ձերբակալել տուաւ տեղւոյն երեւելի Հայերը, թուով 400 հոգի, որոնք կրեցին բանտարկութիւն և սաստիկ պատիժներ, վերջէն ալ փոխադրուեցան Կեսարիոյ բանտը։

Քանի մը օր յետոյ սկսաւ զինահաւաքութեան Հայերէն՝ նմանը չտեսնուած խստութեամբ։ Ամէնէն առաջ եկեղեցին գրաւեցին՝ կարծելով թէ հոն մթերուած էին զէնքերը։

Ապրիլ 3ին Վարդուկ Զէքէեան ծերունին կառավարչատան մէջ

(1) Այս քահանան որ բնիկ Թոմարզացի էր, ծնած 11 Յուլիս 1866ին, մկրտութեան անունով Յարութիւն, որդին էր Տ. Յակոբ անուն քահանայի մը և իր ուսումը առած Թոմարզայի Սահակեան վարժարանին մէջ։ 1897ին քահանայ ձեռնադրուած էր Ստեփանոս եպ. Սանտալճեանէ։ Ինչպէս յետոյ պիտի տեսնուի նահատակուած է տարագրութեան միջոցին։

կ'ապանուի ծեծի տակ։ Կը կանչուի Տ. Յակոբ քհ. Պօյաճեան որ նախ կը մերժէ թաղումը կատարել, առարկելով թէ ինք պարտաւոր է եղելութիւնը տեղեկագրել Առաջնորդարան, ապա տեղի կու տայ խոհեմներու թելադրութեամբ։

Այս պատճառով կը ձերբակալուի ամբաստանուելով իբր զէնք պահող և կը դատապարտուի Կեսարիոյ պատերազմական Ատեանէն և յետոյ ալ աքսորուելով՝ անգթօրէն կը նահատակուի ճամբան։

Իրեն հետ օծակից, հայրենակից Տ. Գրիգոր քհ. Տէր Գրիգորեան(1) կը հասնի իր հայրենակիցներու մէկ մասին հետ Դամասկոս և 26 Օգոս. 1916ի իսլամացման հրամանին չհնազանդելով կը վտարուի Դամասկոսէն Թաֆիլէ, սակայն անատակ տոկալու՝ ճամբայ չելած կը մեռնի թշուառութենէն ծիւրած։

Իսկ իր միւս օծակիցը՝ Յարութիւն քհ. Տէր Կարապետեան(2) կը նահատակուի Միջագետքի կողմերը (Թէոդիկ, Գողգոթա)։

1915 Օգոստոս 25ին կը հասնի ընդհանուր տեղահանութեան հրամանը, և երկու օր միջոց կը տրուի պատրաստուելու համար մեկնելու։

Կը ձերբակալեն Հնչակեան Յակոբ Մատագճեանը, և դժոխային չարչարանքներով կ'ստիպեն որ կուսակցական թուղթերու տեղը ըսէ։ Երկու ժամ միջոց կը խնդրէ և օգտուելով տրուած պատեհութենէն ամէնն ալ կ'անհետացնէ։



ՅԱԿՈԲ ՄԱՏԱԳՃԵԱՆ
(Ծն. 1880 Օգոս. 12)
(Նահատակուած Հաճըն 1921ին)

1903ին Խանին զրուման ասեն դիմադրութիւնը կազմակերպողներէն մին եւ այս պատճառով իսկ Ամերիկա փախած:

1906ին կը դառնայ Թոմարզա եւ ձերբակալուելով կ'աքսորուի:

1910ին կը դառնայ Թոմարզա եւ կը մասնակցի համայնքային գործերու իբր Հնչակեան եւ կ'ընտրուի Թաղական:

Զինադադարէն յետոյ խոյս կու տայ Կիլիկիա եւ հոն Հաճընի մէջ մինչեւ վերջին շունչը կռուելով կը մեռնի:

Կատղած Թոմարզայի միւտիրը և էվէրէկի գայմագամը կը հրամայեն երկու ոտքերը պայտել և փողոցները պտտցնել։

---

(1) Աշխարհականութեանը Բարսեղ Տէրտէրեան, ծնած 1861ին։

(2) Մկրտութեան անունը Եղիա, ծնած է 18 Մայիս 1864ին։



Յակոբ Մատագճեան կը խնդրէ զինքը եկեղեցի տանիլ թուղթերուն և զէնքերուն թաքստոցը ցոյց տալու համար և երբ հոն կը հասնին կը խնդրէ որ զինքը տանիք հանեն և երբ կը հանեն, ինքզինքը վար կը նետէ, ինքնասպան ըլլալու համար սակայն միայն ոտքը կը ջախջախուի և կը փրկուի մահէն և ողջ ալ կը մնայ մինչև զինադադար։

Երբ Թոմարզացիներու կարաւանը Ս. Աստուածածին վանքին դիմացը կը հասնի, Հաֆըզ, Հայոց հակառակորդը և Տ. Յակոբ քհ. Պօյաճեանի ոխերիմ թշնամին, իր անցեալ պարտութեանց վրէժը լուծելու համար, վանքին զանգակատունէն էզան կը կարդայ։

Թոմարզացիք կը քշուին Միջագետքի անապատները, Հալէպ, Դամասկոս և Տէր-Զօրի շրջակաները, ճամբան զոհ տալով իրենց մեծամասնութիւնը, և տասանորդուելով պարզապէս, վասնզի 1914ին հազար տուն և իբր 10000 բնակիչ ունեցող պատմական Թոմարզայէն 1919ին Հայաստան, և արտասահման (Ամերիկա ալ մէջը ըլլալով) հազիւ 1000 Թոմարզացիներ կ'ապրէին(1) (Յարգանք սանմանեկին, 30-31)։

Տեղահանութեան այս թոհուբոհին մէջ Թոմարզա սպանուած է Կեսարացի դեղագործ Լ. Փանոսեան։

Դարձեալ Կեսարիայէն հոս բերուելով՝ մորթուած են 21 առեւտրականներ, որոնցմէ յիշենք Կարապետ Եուսուֆեան, Գառնիկ Գավճեան, Տէրեան եղբարք, Արամ Տապանեան և այլն։

ԶԻՆԱԴԱԴԱՐԻՆ ՅԵՏՈՅ.

Զինադադարէն յետոյ աննշան թուով Թոմարզացիներ կը դառնան իրենց աւերուած հայրենիքը։

1919ին Կեսարիոյ Առաջն. փոխ. Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեան կ'այցելէ Թոմարզա, ուր իրեն սիրալիր ընդունելութիւն մը կ'ընեն տեղւոյն Թուրքերը, որոնք թերեւս վերահաս պատիժի մը սարսափին տակ, գաւառակին միւտիրին թելադրութեամբ կը խոստանան տեղահանութեան զրկանքներուն ենթարկուած Հայերէն դարձողներու բաժին հանել նոյն տարուան հասած հունձքէն։

Տ. Սերովբէ Աքհ. կ'այցելէ Ս. Պօղոս-Պետրոս ընդարձակ եկեղեցին և ժամերգութիւն կը կատարէ և կը քարոզէ, անպսակները կը պսակէ, անկնունք երախաները կը մկրտէ, անհաղորդներուն հաղորդութիւն կու տայ և մեռեալներուն համար հոգեհանգիստ կը կատարէ։ Կ'այցելէ նաև Ս. Աստուածածին վանքը, որ միայն ուրուատեսիլ կմախքի մը վերածուած էր։

Թոմարզացիք հազիւ դարձած տեղահանութենէն իրենց տնտեսական վիճակը վերակազմած էին, երկրագործութեամբ և արհեստներով քիչ շատ բարեկեցութիւն մը ապահովելով։

1929ին Թոմարզայի մէջ կային 44 այր, 55 կին, 22 մանչ և 24 աղջիկ, ընդամէնը 145 հոգի, որոնք սակայն չկրցան ժուժել միջավայրին դառնութիւններուն և 1932–33ին Հայաստան գաղթելու միտքով էվէրէկ տեղափոխուեցան, սպասելով խոստացուած Հայաստան մուտքի արտօնութեան որ ցարդ կը յապաղի դժբախտաբար։

---

(1) Պ. Յ. Երլանճեան որ 14000 ներկայացուցած է Թոմարզացիներու թիւը, աւելի լաւատես 3000 կը դնէ վերապրողներու թիւը, 230 ընտանիք՝ Միացեալ Նահանգները, 200 ընտանիք՝ Հարաւ. Ամերիկա, 125 ընտ. Սուրիա, 40 ընտ. Ֆրանսա, 32 ընտ. Կ. Պոլիս և Էվէրէկ, 8 ընտ. Յունաստան, 12 ընտ. Խորհ. Հայաստան։

XXVII

# Ճ Ի Ւ Ճ Ի Ւ Ն

ՏԵՂԸ.

Թոմարզայի և Զօմախլուի միջնասահման և այս վերջինէն երկու ժամ հեռու գիւղ մըն է, զուտ Հայ բնակչութեամբ։

ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՆՑԵԱԼ.

Ամէն տարակոյսէ դուրս է թէ Հայերը հիմնած են այս գիւղը, հաւանօրէն ԺԸ. դարուն մէջ, Իլիպէի, Զօմախլուի, Ինճէ-Սուի և այլ գիւղերու պէս, վասնզի ո՛չ Սիմէոն Կաթողիկոս և ո՛չ ալ Երեմիա դպիր Օշականցի զայն կը յիշեն։

Ըստ Յ. Արզումանեանի (էջ 25) Էքրէքէն գաղթուած և հոս հաստատուած են, սակայն Պ. Յակոբ Ելլանճեան կը հաւաստէ թէ անոնք Թոմարզայի մօտ Պելեսիմոն գիւղին —որուն բնակիչներու մէկ մասը Թոմարզա գացած էին— բնակիչները հիմնած են, իրենց նախնական բնակավայրէն փոխադրուելով՝ Տէվէլուի աղաներուն սեփական այս հողերուն վրայ ուր հաստատուած են իբր ճորտ։

ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆ.

1886ին Վտարանդին կը գրէ թէ հոս կ'ապրէին 70 տուն Հայեր։

1914ին անոնց թիւը 140 տունի բարձրացած էր։ Անձերու թիւն էր 1100 հոգի Հայ և 20 անձ Հայ-Բողոքական։

ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԴՊՐՈՑ.

Ունէին Ս. Աստուածածին անուն եկեղեցի մը։

1872-1873ին ունէին անանուն դպրոց մը կամ կրթական հաստատութեան մը կորիզը, ուր կ'ուսանէին 40 աշակերտներ։

1901ին վարժարանը կը կոչուի Սարգիսեան, միայն մանչ 50 աշակերտներով և մէկ ուսուցիչով և 50 ղրշ. ամսական ծախքով, որ կը հայթայթուէր աշակերտներու թոշակէն։

ԿԵԱՆՔ ԵՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ.

Ճիւճիւնի բնակիչներուն գլխաւոր զբաղումն էր երկրագործութիւն, և տնտեսական վիճակնին հետզհետէ կը բարւոքէր։

Անոնք կրցած էին դառնալ հողատէր և կը գնէին հետզհետէ թրքապատկան արտերը, շնորհիւ իրենց աշխատութեան։

Իրենց լեզուն Վտարանդին կը համարէ «ապականեալ հայերէն» մը (Մասիս, թ. 3848) մինչ Պ. Արիս Գալֆայեան (Զօմախլու, 19) կը ներկայացնէ զանոնք թրքախօսներ և կ'ըսէ թէ աղաներու բռնութեամբ մոռցած են իրենց մայրենի լեզուն (Նոյն, էջ 18)։

Կը տարուիմ մտածել թէ նախապէս հայախօս եղած են և ապա հետզհետէ թրքախօս դարձած են։

Ճիւճիւնի Հայերը իրենց քահանան՝ Իգնատիոս Աքհ. Աւագեանն(1)

(1) Ծնած է 1860ին Զօմախլու, ուր առած է իր ուսումը և յետոյ զանազան գիւղեր ուսուցչութիւն ըրած է։ Այն ատեն կը կոչուէր Իգնատիոս Եաննըճեան։ 1884ին կը ձեռնադրուի քահանայ Եղիա եպ. Դերձակեանէ։ Աւագ քահանայ կ'անուանուի յետոյ։ Թշուառութեան մէջ մեռած է Տէր-Զօրի կողմերը։



ալ հետ ունենալով՝ քշուած են մեծ մասամբ մինչև Տէր-Զօրի կողմերը և գրեթէ բնաջնջուած են։

ԶԻՆԱԴԱԴԱՐԷՆ ՅԵՏՈՅ.

1100 կենսախայտ Ճիւճիւնցիներէն միայն աննշան փոքրամասնութիւն մը, 10-15 տնուոր Հայեր կրցած են դառնալ իրենց գիւղը և տիրանալով իրենց ստացուածքներուն՝ ապրիլ երկրագործութեամբ։ 1928ին անոնք 14 այր և 18 կին, 9 մանչ և 15 աղջիկ, գումարը 56 հոգի կը մնային հոն և թերևս ալ հոն են ցարդ։

XXVIII

# Ե Ա Ղ Տ Ը Պ Ր Ո Ւ Ն

Գօզան-օղլուներու շրջանին երբ անոնք իրենց իշխանութեան և ազդեցութեան տակ ունէին նաև Էվէրէկի շրջանակը, իբր ամարանոց կը գործածէին այդ կողմերը նաև ԽԱՐՄԱՆՃԸԳ կամ ՄԻՒՍԹԷՇԱՐ ՉԻՖԼԻԿԻ կոչուած ագարակը։ Ինչպէս իրենց միւս ստացուածքները,



Եաղտը Պրունի եւ Կէօմէղի ժողովուրդը եւ իրենց քահանաները
Տ. Վարդան Քհ. Դաւիթեան եւ Տ. Յակոբ Քհ. Քիւլհաննեան

նոյնպէս նաև այս ագարակը իրենց նուաճումէն յետոյ կառավարութենէն գրաւուեցաւ և աճուրդով ծախուեցաւ։

Այս ագարակը որ կը գտնուէր Էվէրէկի արեւելեան կողմը և Թոմարզայի հարաւակողմը 4-5 ժամ հեռուն, դարձաւ սեփականութիւնը Տէֆթէրը Խազանիի Նազըր Րիզա փաշայի, որ թոյլ տուաւ որ իր հողերուն վրայ հաստատուին վեց գիւղեր ճորտական կարգերով։ Անոնք իրենց բերքին 1/8ը կու տային կառավարութեան և 1/12ը հողատէր փաշային։

Այդ վեց գիւղերէն երեքը, Եաղտը Պուրուն, Ինճինէ, և Ղազըր Կէօմէղի, հայաբնակ էին և հիմնուած Թոմարզացիներու կողմէն (Յ. Ար-

զումանեան, Պատմ. Էվէրէկի, էջ 59), բայց աւելի հաւանական է որ, ինչպէս նոյն ինքն Արզումանեան կը հաստատէ Եաղցր Պռունը բացառաբար հիմնած են ճիւճիւնցիք, 1860ական թուականներուն վերջը կամ 1870ականներուն սկիզբը։

Իբր ճիւճիւնէն գաղթած, անոնց պէս թրքախօս՝ զուտ 38 տուն Հայերէ կը բաղկանար այս գիւղը։

Ունէին աղօթարան մը Ս. Կարապետ անունով որ 1904էն յետոյ Տրդատ եպ. Պալեանի ջանքերով, եկեղեցիի վերածուած էր։

Դպրոցը կը կոչուէր Յակոբեան և ունէր միայն 10 աշակերտ 1901ին 45 ղրշ. ամսական ծախքով որ կը հոգար եկեղեցին։

Իր հոգեւոր հովիւն էր տարագրութեան ատեն Տ. Վարդան քհ. Դաւիթեան (ծն. 1862) Զօմախլուցի, աշխարհական անունով Մարտիրոս, որ իր ուսումը առած է Թոմարզայի վանքը և ապա ուսուցիչ եղած է իր ծննդավայրը։

1892ին ձեռնադրուած է Սանտալճեան եպ.է Եաղտը Պրունի եկեղեցւոյն վրայ։ Նոյն օրերուն իսկ իբր մասնակից Փոքր Հայքի շարժման կառավարութիւնը ուզած է ձերբակալել զինքը։ Կրօնական արգելք ցոյց տրուելով, երաշխաւորութեամբ ձգուեցաւ որ իր կանոնական քառասունքը լրացնէ Էվէրէկի մէջ և անկէ յետոյ յանձնուեցաւ, սակայն ընդհանուր ներումէն օգտուելով դարձաւ իր գիւղը և մինչև 1915, աղէտին տարին, պաշտօնավարեց հոն և իր հօտին հետ տարագրուեցաւ անապատները։ Այն բացառիկ բախտաւորներէն է որ վերապրած է աքսորէն։

Հիմա հաստատուած է Գալիֆորնիա։

XXIX

# ԵԷՆԻՃԷ

Էվէրէկէն և Թոմարզայէն հաւասարապէս 6 ժամ հեռու նոյնպէս Մուսթէշար Չիֆլիկի մէջ, զուտ հայաբնակ գիւղ մըն էր հայախօս 54 տուն բնակչութեամբ։

Ըստ Մատաղճեանի (Յարզանք Տանամեակին, էջ 32) նոյնպէս Թոմարզայի հարաւային կողմը հաստատուած Սէօյիւտլիի պէս 1870–1875 թուականներուն Թոմարզայէն այս ամայի վայրը տեղափոխուած ընտանիքներ հիմնած են այս գիւղը:

Պ. Յակոբ Երլանճեան որոշապէս կ'ըսէ թէ 1870ին 40 ընտանիք Թոմարզայէն գաղթած են Եէնիճէ և հիմնած են այս գիւղը, իրենց քեհեան եղած է Ղազէր էմմի, որ Թոմարզայէն գաղթած էր Եէնիճէ, ինքը անուանի սերունդէ և քեհու զաւակ, գացածին պէս, հոն գտնուող 40 Հայ տնուորին քեհեան կ'ըլլայ և 105 տարեկան կը մեռնի։ Բազմաթիւ զաւակներու, թոռներու, կովու, իշու, գոմշուկի տէր, յարգուած անձնաւորութիւն մըն էր, ինչպէս գրած է իր մասին Մելքոն Աստուր (Բիւզանդիոն, թ. 3452)։

Եկեղեցին կը կոչուէր Ս. Թորոս իսկ դպրոցը՝ Լեւոնեան, ուր կը յաճախէին 30 մանչ տղաք, մէկ ուսուցիչով և 45 ղրշ. ամսական ծախքով՝ որ կը հայթայթուէր եկեղեցւոյ հասոյթներէն։

Գիւղին վերջին քահանան էր Տ. Գալուստ (երբեմն Պետրոս) Յովսէփեան Զօմախլուցի (ծն. 1851) որ 6 Մայիս 1893ին ձեռնադրուելէն մինչեւ իր տարագրութեան մէջ անհետացումը այս գիւղը պաշտօնավարած է։

XXX

# ՂԱՋԼԸ ԿԷՕՄԷԴԻ

Երրորդը՝ Միւսթէշար Չիֆլիկի վրայ հաստատուած ագարակ-գիւղերուն և դարձեալ զուտ Հայ և հայախօս։

Էվէրէկէն 3 ուկէս ժամ հեռու։ Հիմնուած է ըստ Մատաղճեանի 1870–1875ին Թոմարզացի Հայերէն։ Պ. Յակոբ Երլանճեան կ'ըսէ թէ այս գիւղը հիմնուած է 1882ին Թոմարզացի 12 ընտանիքներէ։

Եկեղեցին՝ Ս. Յակոբ կը կոչուէր, որ 1904էն յետոյ պաշտօնապէս ճանչցուած է։ Նաև գիւղը ունէր 1901ին վարժարան մը՝ Յովհաննէսեան անուն, 15 միայն մանչ աշակերտով և 35 ղրշ. ամսական ծախքով, որ եկեղեցին կը վճարէր։

Իրենց վերջին քահանան էր Յակոբ քհ. Քիւլհանճեան, աշխարհական անունով Պետրոս, որ ծնած էր 1874ին Սէօյիւտլի և ուսած Թոմարզայի վանքը։ 28 Մարտ 1899ին ձեռնադրուած էր Ստեփան եպ. Սանտալճեանէ Կէօմէդիի եկեղեցւոյն վրայ։ Իր հօտին հետ աքսորուած՝ թշուառութեան մէջ կը վերջացնէ իր օրերը։

XXXI

# ՍԷՅԻՏԼԻ ԿԱՄ ՍԷՕՅԻՒՏԼԻ

Միւսթէշար Չիֆթլիկի կամ Խարմանճըգի սահմաններէն դուրս և անոր կից կային երկու ուրիշ գիւղեր, Սէօյիւցլի կամ Սէօկիւցլիւ և Սաչախ կամ Սաչագ անուն, որոնց տէրերը գիւղացիները իրենք էին։

Թէև Րիզա փաշան կ'ուզէր իւրացնել այս երկու գիւղերը եւս սակայն չի կրցաւ, քանզի այդ գիւղերուն բնակիչները իրմէ առաջ արդէն տեղը շինցուցած էին։

Առոնցմէ Սէօյիւցլի կը գտնուէր Թոմարզայի հարաւային կողմը և Էվէրէկի արեւելեան կողմը 5 ժամ հեռու, կամ Ինճէ Սուի հարաւ-արեւմտեան կողմը, անկէ 3 ժամ հեռու։ Թէև Մատաղճեան կ'ըսէ թէ գիւղը 1870-1875ի միջոցները կազմակերպուած է սակայն Պ. Յակոբ Երլանճեան կ'ըսէ թէ 1868ին մաս մը Թոմարզացիներ իրենց դրամովը տեղը կառավարութենէն գնելով գաղթած են Սէօյիւցլիւ և հոն հիմնած են զուտ Հայ գիւղ մը,

Տ. ԱԻԱԳ ՔՀ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆ

այս ամայի վայրին մէջ, ուր իրենք առաջինները կ'ըլլային հաստատուող։

Այս գիւղին հիմնադիր ընտանիքներէն ոմանք իրենց Թոմարզայի կալուածները կը պահէին (Յարգանք Տասնամեակին, էջ 32)։

Մէօյիւտլիցիք հայախօս էին և կ'զբաղէին երկրագործութեամբ և կը պահէին Թոմարզացւոց յատուկ սովորութիւնները և բարքերը։



Մէօյիւտլիի
Տ. Աւագ քհ. Յովակիմեանը
Այտընի մէջ խաչնարածութիւն
ըրած ատեն

Գիւղը կը բաղկանար ընդամէնը զուտ Հայ 61 կամ ըստ Տ. Աւագ քհ.ի 100 տնուորներէ։ Իրենց աղօթարանը՝ Ս. Փրկիչ, 1904էն յետոյ եկեղեցիի վերածուած է։ Դպրոցը՝ որ կը կոչուէր Թորոսեան, 1901ին ունէր 28 մանչ աշակերտներ, մէկ ուսուցիչով և 30 ղրշ. ամսական ծախքով, որ եկեղեցիին սնտուկէն կը տրուէր։ 1914ին հոն կ'աշակերտէին 150 երկսեռ փոքրիկներ։

1895-1896ի Հայկական ջարդերու ատեն շրջակայ Թուրք գիւղացիներէն կազմուած խուժանի մը յարձակման զոհ պիտի երթար եթէ Թոմարզայի վրայ ղրկուած Թրքական զօրագունդը զայն չի փրկեր։

1915ի աղէտի տարին, Ծաղկազարդի օրը, զէնք փնտռելու պատրուակով խուզարկութիւններու ենթարկուելէ յետոյ տարագրուեցաւ նաև Մէօյիւտլի, Զատկէ 15 օր յետոյ իր հոգևոր պաշտօնեային Աւագ քհ. Յովակիմեանի (աշխարհական անունով Կարապետ) հետ։ Այս քահանան ծնած էր 1875ին Մէօյիւտլի և իր ուսումը առած հոն և Թոմարզա։ 6 Յուլիս 1906ին ձեռնադրուած էր քահանայ Տրդատ եպ. Պալեանէ իր ծննդավայրին եկեղեցիին վրայ։

Մէօյիւտլիցիք կը քշուին, Ճիւճիւնի Հայոց հետ Բունլու, Սիս, Օսմանիյէ, Հասան Պէյլի, Գաթմա ճամբով անապատները։ Տ. Աւագ քհ. կը յաջողի ինքզինքն նետել Դամասկոս։ 26 Օգոստ. 1916ին իսլամացման խիստ հրամանին կը համակերպի, աւելի հեռուները քշուելու վախով։ Համայի մէջ կը գտնէ իրենները, և ապա կ'անցնի Հալէպ։ Զինադադարին իր հօտէն անջատուողներուն հետ կ'անցնի Ատանա ուր կը մնայ 3 տարի։ Կիլիկիոյ պարպումի ատեն կ'ապաստանի Իզմիր, ուր այս անգամ քէմալականներու ձեռքը գերի կ'իյնայ, և խաչնարածութեամբ իր կեանքը կ'անցնէ, մինչև որ փրկուելով դարձեալ Հալէպ կ'անցնի։ 1924ին Պէյրութ և անկէ ալ Յունաստան կ'երթայ, հոն քահանայագործելու համար և կը վախճանի։



XXXII

# ՍԱՋԱԳ ԿԱՄ ՍԱՋԱԽ

Նոյնպէս Թոմարզացիներէ հիմնուած այս գիւղը, կից Մէօյիւտլիի շինուած է անոր հետ կամ քիչ վերջը։

Սաչախ եւս զուտ Հայ ու հայախօս, միայն ունէր 30 տուն բնակիչ։

Ունէր Ս. Աստուածածին անուն եկեղեցի մը՝ 1904էն յետոյ ճանչցուած և Ալյանեան անուն վարժարան մը, 10 աշակերտով և 25 ղրուշ ամսական ծախքով որ եկեղեցին կը հոգար։

Տարագրութեան մէջ, ինչպէս իրենց մեծամասնութիւնը, կորած է նաև գիւղին երէցը Յարութիւն քհ. Տէր-Պետրոսեան, որ ծնած էր 1860ին Ղարաքէօյ (Կեսարիոյ վիճակ) աշխարհական անունով Աստուածատուր։ Ուսած էր իր ծննդավայրին մէջ։ 1886ին ձեռնադրուած է Եղիա եպ. Դերձակեանէ Սաչախի եկեղեցիին վրայ։

XXXIII

# ՏԱՇԱՆ ԿԱՄ ԹԱՇԽԱՆ ԿԱՄ ԹԱՇՃԻ

Իվէրէկէն 7 ժամ հեռու, զուտ հայաբնակ ու հայախօս այս ագարակ-գիւղը ըստ Մատաղճեանի 1870-75ին, իսկ ըստ Յակոբ Եըլանճեանի 1882ին հիմնուած է Թոմարզայէն գաղթող ընտանիքներու ձեռամբ որոնց թիւն ալ կը ճշդէ Եըլանճեան, 40 տուն նշանակելով։

Այսպէս Միւսթէշար Չիֆլիկի վրայ հաստատուած երեք գիւղերէն երկուքին՝ Եէնիճէի և Դազլը Կէօմէդիի, և անոր կից՝ դուրսը հիմնուած Մէյիւտլիի և Սաչախի նման այս ալ Թոմարզայի մէկ գաղութն էր և կը գտնուէր անոր հարաւակողմը։ Իր հաստատութիւնը՝ եթէ ճիշդ են Յ. Արզումանեանի (էջ 47) տեղեկութիւնները աւելի հին կը թուի, վասնզի իբր թէ Թաշխանի տեղն Գօզանեանց ամարանոցներէն մէկն էր և անոնց պէս ծախու հանուած։ Այդ աճուրդի դրուած հողերուն այս մասը, Թոմարզացի 37 անձերու վրայ մնացած էր և թէև դրամը վճարած էին բայց կը վախնային որ Միւսթէշար Չիֆլիկի տիրացած Րիզա փաշան այդ հողերուն ալ տէր կը կանգնի և իրենց թոյլ չի տար հոն հաստատուիլ։ Ուստի Կ. Պոլիս գտնուող և այս գնումը կատարող մի քանի Թոմարզացի երեւելիներ, խորհրդակցութեամբ, կ'որոշեն կայսերական իրատէով մը այս գնումը հաստատել տալու հնարք մը գտնել և Սէլամլըգի միջոցին Սուլթան Ապտիւլ Ազիզի՝ Թանաճի Կարապետ անուն աղքատ մարդու մը ձեռքով աղերսագիր մը կը ներկայացնեն և կը յաջողին իրատէ մը ձեռք բերել, հաստատող իրենց սեփականատիրութիւնը։

Թոմարզայի աղաները կը դառնան հայրենիք այդ հրովարտակով զինուած և քիչ քիչ կ'երթան հաստատուիլ Թաշխան, ուր կը տանին նաև Ճընովենց տղան, և Տ. Յարութիւն անունով քահանայ ձեռնադրել կու տան

Բայց Գօզան օղլուի զինուորները և Թուրք զանազան բռնակալներ չարունակ զիրենք կը նեղէին։ Տ. Յարութիւն քհ. ամէն եկողներուն պզտիկ պարգեւներ և ուտելիք և անոնց ձիերուն ալ կեր կու տար և զանոնք կը սիրաշահէր։

*Անոնք մտածելով որ այս գիւղը իրենց համար շահագործութեան վայր մըն էր՝ ուրկէ կրնային միշտ նպաստաւորուիլ, անոնց գոյութեան հանդուրժեցին։ Տ. Յարութիւն քհ. ալ իր կարգին մտածեց այնպէս մը ընել որ գիւղացիք չնեղուէին անոնց հարստահարութիւններէն, ուստի գիւղին դիմաց լերան վրայ գտնուած հողի բերրի մաս մը բոլոր գիւղացիներու աշխատութեամբ մշակել տուաւ և անոր հունձքը եկեղեցին ամբարեց, որպէսզի այս աւազակ այցելուներուն այս բերքէն տայ։ Այսպէս Թաշխան հիմնաւորուեցաւ և հետզհետէ իր բնակչութիւնը աճեցաւ։*

1886*ին հազիւ* 30 *տնուոր էին, մինչ* 1914*ին* 96 *տնուոր (Յ. Արզումանեան* 200 *կը նշանակէ սակայն անհաւատալի է)։*

*Սակաւաթիւ Բողոքականներ կային իրենց մէջ։ Ունէին անոնք եկեղեցի մը* Ս. Աստուածածին՝ *նախ աղօթարան և* 1904*էն յետոյ եկեղեցիի վերածուած։ Իրենց վարժարանը՝ հաւանօրէն իրենց անդրանիկ հովիւին Տ. Յարութիւն քհ.ի անունով կը կոչուէր* Յարութիւնեան։ *Վարժարանը* 1901*ին ունէր* 32 *աշակերտ, և* 50 *ղրշ. ամսական ծախք, եկեղեցւոյ սնտուկէն հայթայթուած։*

*Թաշխանի Հայերը՝ բաւական բարեկեցիկ վիճակ մը ունէին, շնորհիւ իրենց հողային արդիւնաբերութեան։ Թաշխան կ'արտադրէր ցորեն, գարի, սիսեռ, ոսպ, խաղող։*

*Անոնք կ'զբաղէին նաև անասնապահութեամբ։ Թաշխանցիք հաւաքաբար՝ իրենց հովիւին՝ Աբգար քհ. Մղտեսեանի*(1) *հետ քշուեցան Տէր-Զօրի կողմերը։*

XXXIV

## ՋԱՅԻՐ-ՕԼՈՒԳ

*Թաշխանի մօտ և անկէ ածանցուած սակաւաթիւ հայութեամբ գիւղ մը որ ոչ եկեղեցի ունէր և ոչ ալ քահանայ և ոչ ալ դպրոց։*

---

Գ.

## ԿԵՍԱՐԻՈՅ ԹԵՄԻՆ ԱՆՑԵԱԼԻՆ ՄԷՋ ԵՆԹԱԿԱՅ ՎԱՅՐԵՐԸ

*Աւարտելէ յետոյ տեղահանութենէն առաջ Կեսարիոյ առաջնորդութեան և անոր հոգեւոր վարչութեան տակ գտնուող վիճակներու շարքը, հարկ կը համարեմ դիտել տալ թէ ասկէ* 35 *տարի առաջ Կեսարիոյ Արքեպիսկոպոսական վիճակը կ'ընդգրկէր աւելի ընդարձակ սահմաններ դէպի Արեւելք, դէպի Արեւմուտք և դէպի Հիւսիս։*

1900 *թուականին Պատրիարքարանը որոշած ըլլալով եկեղեցական վիճակները պատշաճեցնել Օսմ. պետութեան վարչական բաժանումներուն, իրմէն բաժնուեցան Կեսարիոյ կուսակալութեան (այն ատեն կառավարչութեան) սահմաններէն դուրս գտնուած այն վայրերը որոնք հինէն ի վեր կապուած էին Կեսարիոյ առաջնորդութեան։*

*Այսպէս Կեսարիոյ սանճագին արեւելեան կողմը գտնուած սահմանակից Սեբաստիոյ կուսակալութեան կեդրոնական Սանճագին ենթակայ Պիւնեանը Համիտ, Ազիզիյէ և Թօնուզ գաւառներուն հայաբնակ վայրերէն ոմանք կցուեցան Սեբաստիոյ Առաջնորդութեան։ Էնկիւրիւի կուսակալութեան Գըրշէհիր Սանճագին հայաբնակ վայրերը կցուեցան Գաղատիոյ առաջնորդութեան։ Իսկ Գոնիայի կուսակալութեան կեդրոնական Սանճագին ենթակայ Էրէյլի գաւառը և Նիյտէ Սանճագին ենթակայ Նիկտէ, Նէվշէհիր և Իւրկիւպ, Աքսերայ, Պոր գաւառներուն հայաբնակ վայրերը թողուեցան Գոնիայի Նորակազմ առաջնորդութեան, որով երեք շրջաններ բաժնուեցան Կեսարիոյ առաջնորդութենէն։*

*Արդ նկատելով որ այդ շրջանները Արգէոսի շուրջը ամփոփուած հայութեան հետ մեծ աղերս ունին և այդ իսկ պատճառով երբեմն Կեսարիոյ առաջնորդութեան մաս կազմած են, հարկ դատեցի անոնց մասին ալ տալ հակիրճ տեղեկութիւններ։*

Ա.

### ՍԵԲԱՍՏԻՈՅ ԹԵՄԻՆ ԿՑՈՒԱԾ ՎԱՅՐԵՐ

*Այս շրջանին Հայերը կարելի է մասը համարել Կէօսթէրէի շրջանին հայութեան և մասնաւորապէս կապ մը գտնել անոնց ու Թոմարզայի հայութեան մէջ, քանի որ աշխարհագրական միեւնոյն շրջանակին մէջ են և պատմական միեւնոյն անցեալը և միեւնոյն ճակատագիրը ունեցած են։ Այս շրջանին հայաբնակ վայրերն էին։*

I

## ԱԶԻԶԻՅԷ

*Համանուն գաւառին կեդրոնական քաղաքը, որ երբեմն կը կոչուէր նաև Բունար Պաշը։ Աշխարհագրապէս իրապէս Կեսարիոյ մաս կազմող Համիտեան շրջանին՝ այս քաղաքը քաղաքական նկատումներով եղած բաժանումներուն ատեն Սեբաստիոյ կուսակալութեան կցուած, հիմա դարձեալ դարձուած է Կեսարիոյ։*

*Հաթեանց շրջանէն իսկ չինավայր (տես էջ* 113), *ըստ ոմանց հին Կապադովկիոյ Արիարաթիա քաղաքին տեղը (էջ* 419) *կը գտնուէր։ Ուրիշներ զայն կը նոյնացնեն Ծամնդաւի (տես* 417 *և* 422) *կամ Լարխայի հետ (էջ* 419)*։*

*Նախ քան Դանիշմանտեանց տիրապետութեանց ենթարկուիլը պէտք է ունեցած ըլլայ ստուար Հայ բնակչութիւն, առաւելապէս Վասպուրականէն տեղափոխուած։ Իր մօտն էր Թուբլուը որ պահ մը աթոռ եղաւ ԺԱ. դարուն Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան։*

*Սակայն չփոթութիւնները և կոտորածները որ բարբարոս Թուրքերը կատարեցին, ինչպէս բոլոր Կապադովկիոյ, նոյնպէս այս կողմերու Հայերը բնաջնջած էին։ Վերջերը հոն պզտիկ գաղութ մը երեւան եկած էր։*

---

(1) *Ծնած է* 1877*ին Թոմարզա, աշխարհական անունով Ստեփան։ Թոմարզա ուսում առած է։* 1899*ին քահանայ կը ձեռնադրուի Տրդատ եպ.էն Թաշխանի եկեղեցիին վրայ՝ ինկած է աքսորի ճամբուն վրայ Տէր-Զօրի կողմերը։*

Քաղաքը ունէր ընդամէնը 1000 տուն բնակիչ որուն միայն 120 տունը Հայ էին, մեծ մասամբ Կեսարիայէն գաղթած՝ նոր ժամանակներու մէջ։ Ունէին եկեղեցի և դպրոց։ Կային նաև 5 տուն Բողոքականներ, յատուկ ժողովարանով։

II

# ԷՔՐԷՔ

Թոմարզայի մօտերը, մի քանի ժամ հեռու Հայ գիւղ մըն էր Էքրէք, ենթակայ Սեբաստիոյ Սանճագին Ազիզիյէ գազային ըստ պետական բաժանումներու, սակայն չափազանց մօտ Թոմարզայի։ Ան կը գտնուէր ընդմէջ Ազիզիյէի և Թոմարզայի, հազիւ երեք ժամ հեռու Ազիզիյէէն, իսկ Կեսարիայէն՝ 8 ժամ։

Էքրէք գիւղը կեդրոնն էր 60-70ի չափ մեծ մասամբ հայաբնակ գիւղերու որոնք կը կոչուէին Պօզուքի գիւղեր (Հայ վանորայք, 125–126) և ենթակայ էին Եօզղատի առաջնորդութեան։

Էքրէք բառը ոմանք Ագրակ կամ Ագարակ բառին աղաւաղումը կը կարծեն, ինչ որ կասկածելի է (տես Յ. Վ. Յակոբեան, Բիւրակն, 1899, էջ 607)։ Թորոս Մատաղճեան զայն կը նոյնացնէ հիններու Ծամնդաւին (Յարգանք Տասնամեակին, էջ 20), ինչ որ նոյնպէս նուազ հաւանական կը թուի։ Ռամսէյ անոր մօտ կը կարծէ Ստրաբոնի յիշած Դաստիարկումը (տես 213), իսկ Տրդատ եպ. Պալեան, հոն կը կարծէ Պիզուն։

Բունար Պաշի կոչուած փոքրիկ հովիտին մէջ կը գտնուի հին գիւղը որ այժմ աւերակ է։

Էքրէք ունէր ըստ Անդրէաս վրդ. Ալեքսանդրեանի 400 տուն (Պատմ. Սեբ. էջ 378) և ըստ Տրդատ եպ. Պալեանի (ՀԱ. 1894, էջ 316) 200-220 տուն զուտ Հայ բնակիչ, որոնք հայերէն ամենեւին չէին գիտեր և թուրքերէն կը խօսէին (ՀԱ. 1894, էջ 316)։ Թէև մշակութեամբ կ'զբաղէին, բայց աղքատ էին ընդհանրապէս. Կ'ապրէին և կը գործէին ըստ ամենայնի նահապետական դրութեամբ։

Երկու եկեղեցի ունէին մին յանուն Ս. Թորոսի(1), որ շատ հին է, և միւսն յանուն Ս. Աստուածածնի, որ 1892ին շինուեցաւ, բաւական պայծառ ու գմբեթաւոր։ Իսկ ունէին երեք գերեզմաննոց՝ որոնց մին նոր և միւս երկուքն շատ հին։ Երկու հին գերեզմանատուններուն մէջ շատ քիչ անգամ ննջեցեալ կը թաղէին։ Այս գերեզմանատուններուն մէջ գտնուած է Հայթեան նշանագրերով քար մը (ՀԱ. 1894, էջ 316 և 1896, էջ 161–162)։

Էքրէք ունէր նաև դպրոց (Պատմ. Սեբ. էջ 378)։

Էքրէքէն 2 ժամ հեռու է Սաղլը գիւղը ուր էր հայազգի Սելեան Օղլուի Չիֆթլիկը։ Այս գիւղին մէջ 100 տուն Հայ բնակիչ կար։ Նոյնպէս երկու ժամ հեռու էր Թազըն, ուր եւս կային Հայեր։

(1) Պատմ. Սեբաստիոյ, էջ 378) Ս. Գէորգ կը դնէ անունը այս եկեղեցիին։



III

# ՍԸՎԶԸՆ

Սըվզըն հայաբնակ գիւղը կէս կամ մէկ ժամ հեռու է Էքրէքէն և 8 ժամ հեռու Կեսարիայէն որուն կապուած էր երբեմն։ Վարչականապէս ան ալ ենթակայ էր Ազիզիյէ գաւառակին։ Իր մօտը կը գտնուէր Խնձորի վանքը։

Սըվզընի Հայերը հայախօս էին և կը բաղկանային 100 տունէ և ունէին եկեղեցի մը (Պատմ. Սեբ. 378 և ՀԱ. 1894, 316)։

VI

# ԿԷՄԷՐԷԿ ԿԱՄ ԿԱՄՐԱԿ

Կեսարիայէն դէպի հիւսիս-արեւելք 9 ժամ անդին էր Կամրակ կամ Գամրակ (թրք. Կէմէրէկ) մեծամասնութեամբ հայաբնակ գիւղաքաղաքը, բլուրի մը լանջքին վրայ հաստատուած, աղտոտ փողոցներով և գիւղի սովորական հոտով։

Կէմէրէկ միտրոպոլիտութիւն մըն էր Սեբաստիոյ կուսակալութեան կեդրոնական Սանճագին Թոնուզ կամ Շէհիր Գըշլա գազային մէջ, և վաղուց կը թուէր բաժնուած ըլլալ Կեսարիոյ վիճակէն, որուն կը պատկանէր ըստ Երեմիա դպիր Օշականցիի 1765 Յունիս 8 թուականով նուիրակութեանց ցուցակին, ուր կը յիշուէր Գեամրակ ուղղագրութեամբ (Դիւան Հայոց Պատմութեան, Գ. էջ 788–789) Ֆէնէսէէն անմիջապէս վերջ և Թալասէն առաջ։

1796ին զայն կը գտնենք Եօզկատի առաջնորդութեան ենթարկըւած վանքի ըստ յիշատակարանի մը տեղւոյն Ս. Աստուածածին եկեղեցին 1794ին նորոգել կը ձեռնարկուի և 1796ին աւարտելով կ'օծուի նոյն տարին Յունուար 20ին «ձեռամբ նահանգին Պօզօխու Առաջնորդ Կիրակոս անրի եպիսկոպոսի»։ Այս արարողութեան ներկայ կ'ըլլան Ս. Կարապետի միաբան Կէմէրէկցի «վէքիլ» Ստեփան և լուսարար Զաքարիա վարդապետները, որով յայտնի է թէ այն ատենէն բաժնուած էր ան Կեսարիայէն։

Կամրակ կամ Գամրակ անունը կը կարծուի թէ ածանցուած է Գամիրքէն(1) (Թորգոմ եպ. Գուշակեան, Բիւզանդիոն, 1914, Փետր. 25, թ. 5274) «Կամարակ անունը, զոր երբեմն գործածած են հայերէնի ուսուցիչներ, հայացրջումի ձախող փորձ մըն է անոնց, որ ընդունելութիւն չէ գտած արդէն: Եկեղեցւոյ ճակատի արձանագրութեան մէջ կիրարկուած Գամրակ ձեւը, թէեւ չունի հնախօսական ոեւէ արժէք, հազիւ կէս դարու գործ ըլլալով(2),

(1) Կարմիր կամ Կարմրուկ (թրք. Կէրմիր) Հայ գիւղը և Կէմէրէկէն ոչ սակաւ հեռու Կամերքան (թրք. Կէօմիւրկէն) Յոյն գիւղը, ամէնքն ալ կը կարծուին Գամիրք բառէն առնուած (Յ. Վ. Յակոբեան, Բիւրակն, 1899, էջ 602)։

(2) Կ'երեւայ թէ ենթագրուածէն աւելի հին է, վանքի Երեմիա Օշականցի արդէն կիրարկած է չափազանց մօտաւոր մէկ ձեւը անոր՝ Գեամրակ գրելով։

բայց կրնայ զէք ցուցնել Գամիրքի (կամ Կիմմերեան) մեկնութեան միտում մը այդ ժամանակին մէջ այլ» (*Թորգոմ եպ.* Նոյն)։

*Կէմէրէկի մէջ կ'ապրէին ըստ ոմանց* 300, *ըստ այլոց* 5-6 *հարիւր, և ըստ ալ աւելի ուրիշներու* 800, *և նոյնիսկ* 1000-1200 *տուն Հայեր, իսկ Թուրքերու թիւը կը հաշուէին* 250 *տուն։*

*Անդրէաս եպ. Ալեքսանդրեան Հայերը* 1500 *և Թուրքերը* 500 *և Բողոքականները* 50 *տուն կը նշանակէ* (Պատմ. Սեբ. 377)։

1914*ին կազմուած վիճակագրութեան մը համաձայն Կէմէրէկ ունէր* 1252 *տուն բնակչութիւն որուն* 902*ը Հայ և* 350*ը Թուրք։ Սապահ-Գիւլեան ևս* 1300 *տուն Հայ և* 200 *տուն Թուրք բնակիչ կը նշանակէ* (Հնչակ, 1935, *թ.* 9)։

*Թուրքերը կը հասկնային և գրեթէ կը խօսէին հայերէն, այնպէս որ այս մեծ գիւղը՝ ընդհանուր առմամբ հայաքաղաքի մը տպաւորութիւնը կ'ընէր այցելուին վրայ* (*Թորգոմ եպ.* Բիւզանդիոն, *թ.* 5274)։ «Տեղական հայերէնը հետաքրքրական բարբառ մ'է անշուշտ, որուն մէջ հաւանաբար պէտք է գտնուին Կեսարիոյ կորսուած գաւառաբարբառին ընդհանուր գիծերը» (Նոյն), *վասնզի ինչպէս երեւոյթները ցոյց կու տան Կէմէրէկի Հայերը Կապադովկիոյ Հայ հնօրեայ բնակչութեան եթէ մնացորդները չէին, սակայն իսլամական տիրապետութեան ենթարկուելէն յետոյ, Կէմէրէկ ամէնէն առաջ Հայ գաղութ ընդունող և վերստին հայաբնակ դարձող վայրերէն մին էր։*

*Իսկ Արծրունեանց և Բագրատունեանց տեղափոխուած ատեն Կէմէրէկ և շրջակայքը Հայերով լեցուն ըլլալը ամէն կասկածէ դուրս է։ Միայն յիշել կը բաւէ թէ* Մուտուռուսուն *ուր հաստատուեցաւ Գրիգոր Սկայասէր կաթողիկոս, Գուրգէն Արծրունի իշխանին հողերուն մէջ* 1065*ին, կը գտնուէր Կէմէրէկի մօտ* (*տես վերը,* 537) *թէև վերջերը Հայոց հետքն իսկ մնացած չըլլար հոն։*

*Կէմէրէկ, ինչպէս նաև շրջակայքը զուտ հայաբնակ վայրեր ըլլալէ յետոյ բնաջնջուած էին թերեւս և Սելջուկեանց շրջանին, Կեսարիոյ հետ նորէն հաւանօրէն Հայ բնակիչներ ընդունած։*

*Առոյգ, բանիբուն և կենսունակ ժողովուրդ մը կ'ապրէր Կէմէրէկի մէջ։ Ամէն կողմ եռուզեռ կար, փողոցները լեցուն էին պզտիկներ և իր երկար ու նեղ շուկային մէջ կը վխտային գնորդներ և անցորդներ։*

*Կէմէրէկցիք աշխատասէր էին, վասնզի թիզ մը հող չի կար չգործուած իրենց շրջանակին մէջ։ Երկրագործութեան յարած էին բուռն թափով, թէև նահապետական դրութեամբ* (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, 1904, *Դեկտ.* 9, *թ.* 2495)։

*Կէմէրէկ ունէր երկու եկեղեցի,*

1. Ս. Աստուածածին, *հոյակապ շէնք մը, համակ քարուկիր, սիւնազարդ և վեհատեսիլ ճարտարապետութեամբ, խոր և լայնանիստ բեմի մը վրայ կը կանգնէին երեք խաչկալներ, որոնց կեդրոնականը մասնաւորապէս փայտի քանդակագործութեան գեղեցիկ նմոյշ մըն էր։*

*Արեւմտեան մեծ դուռը կը հովանաւորուէր ամբողջ եկեղեցիին ճակատի կիսամասը բռնած սիւնազաւիթով մը, որ կը յիշեցնէր Կեսարիոյ եկեղեցիներուն ձեւը։*

*Այս գաւիթին դէմը, բակին մէջ, կը բարձրանայ քարաշէն հսկայական զանգակատուն մը, որ կը տիրէր ամբողջ գիւղին և շրջակայքին վրայ։*



2. Ս. Լուսաւորիչ, *որուն ձեւին ու մեծութեան մասին գաղափար մը չունինք։*

*Ունէին երկու թաղերու եկեղեցիներու քով երկու վարժարաններ,* Արամեան *և* Լուսինեան *անուններով, որոնց մէջ կ'ուսանէին աղէտէն անմիջապէս առաջ* 200 *աշակերտներ,* 5 *ուսուցիչներու խնամքին տակ։ Տարեկան ծախքն էր* 80 *ոսկի։*

*Հանգուցեալ Բրոֆ. Մարտիրոս Անանիկեան* (*ծն.* 1875 *Դեկտ.* 25– 4 *Օգոստ.* 1923 *Դամասկոս*†) *իբր Կէմէրէկցի իր ծննդավայրին կրթական գործին մեծ նպաստ բերած է իր նիւթական օժանդակութիւններով* (*Թորգոմ եպ.* Բիւզանդիոն, *թ.* 5280)։

*Ունէին նաև երկու աղջկանց վարժարաններ եկեղեցւոյ շրջափակէն դուրս, չափազանց յետամնաց վիճակի մը մէջ։ Կէմէրէկ ունէր նաև* Ուսումնասիրաց Միութիւն *մը։*

*Հոն մուտք գործած էր Բողոքականութիւնը, և* 1896*ին ըստ Պատ. Մ. Գալուստեանի* (Բիւզանդիոն, *թ.* 550) *Հայ բնակչութեան մէկ տասներորդը Բողոքական էր։ Ունէին ժողովարան մը և երկու վարժարան, մին մանչերու և միւսը՝ աղջիկներու* 100 *աշակերտներով։*

*Անխտրականութեան գեղեցիկ օրինակ մը տուած է այս քաղաքը, որուն Բողոքական պատուելին յաճախ կու գար քարոզելու Հայ եկեղեցին* (Բիւզանդիոն, *թ.* 550)։

*Կէմէրէկի Հայոց գլխաւոր զբաղումներն եղած են երկրագործութիւն, ոչխարաբուծութիւն, սանտրագործութիւն, գորգագործութիւն, ջուլհակութիւն, ներկարարութիւն, կաշեգործութիւն, դգալագործութիւն, երկրագործութիւն, ջորեպանութիւն։*

*Վաճառականութիւնն ալ Հայոց ձեռքն էր։*

*Կէմէրէկ մինչև* 1768 *զուտ Հայ բնակչութիւն ունեցող գիւղ մըն էր։ Այդ թուականին Թուրք կառավարութիւնը հոն բերած բնակեցուցած է Թուրքեր, որոնք շրջակայ Թուրք, Թուրքմէն և Ալեւի գիւղերու բնակչութեան հետ աշխատած են Կէմէրէկցի Հայերը նեղել, սակայն միշտ ալ ընդդիմութեան բախած են։ Այս պատճառով Կէմէրէկի Հայերը շրջապատի այլազգիները կը կոչէին* չազմազ: 1828*ին ալ Ասէտ փաշայի Կէմէրէկը բնաջնջելու փորձին դէմ անոնք իրենց բուռն ընդդիմութեամբ ցոյց տուած էին հիանալի կորով մը* (*տես* Հնչակ, 1935, *թ.* 9) *որ անշուշտ Թուրքերու համար աչքի փուշ եղած էր։ Համիտեան շրջանին բազմաթիւ Չէրքէզներ տեղաւորուեցան Կէմէրէկի շուրջը, սակայն Կէմէրէկ որուն քաջ բնակիչները ինքնապաշտպանութեան պատրաստ էին, մասնաւորապէս ժիրայրի գործունէութեամբ կազմակերպուած, այնքան պատկառանք ներշնչած էին որ* 1895-1896*ի ջարդերէն ազատ մնացին, և այս պատճառաւ իսկ բարգաւաճ և ցնծուն կեանք մը ունէին, երբ* 1915*ի հայաջինջ եղեռը վերջապէս յաջողեցաւ աւերակի վերածել Կէմէրէկը։*

## V

## ՏԷՆԴԻԼ

*Տէնդիլ գիւղը Կեսարիոյ վիճակին մէջ էր երբեմն, կը գտնուէր Կէմէրէկի հիւսիսային արեւելեան կողմը* 3 *ժամ հեռու* (Լոյս, 1906, *էջ* 861), *և կը պատկանէր Թոնուզի կամ Շէհիր Գըշլայի գաւառին, մի*

քանի հայաբնակ գիւղերու հետ (Պաշտ. Սեբաստ. էջ 377) որոնք սակայն չեմ գիտեր թէ ոեւէ ատեն Կեսարիոյ վիճակին մաս կազմա՞ծ են։

Տէնգիլ ունէր 180 տուն Հայ և 15 տուն Հայ-Կաթոլիկ բնակիչ։

Ունի գրչագիր Աւետարան մը 1449ին գրուած Զմշկածագ (Նոյն, էջ 862)։

Տէնգիլի եկեղեցին կը կոչուէր Ս. Աստուածածին:

## VI

# ՍԱՐՄՈՒՍԱԳԼԸ ԿԱՄ ՊԻՒՆԵԱՆԸ ՀԱՄԻՏ

Սարմուսագլը կը գտնուի Կեսարիոյ հիւսիսային արեւելեան կողմը, 7 ժամ հեռու, Սեբաստիոյ կուսակալութեան Ազիզիյէ գաւառակին մէջ և գայմագամութեան մը կեդրոնն է։ Դիրքը լեռնային է, կիսով Դոռմագի լեռնաշղթային սեպացած սպառուածին դերբուկ կողին և կիսով՝ անոր ստորոտը հարթ դաշտի մը վրայ։ Տեսարանը բաւական սքանչելի, կլիման բարեխառն, հողը արգաւանդ, ունի 400-450ի չափ ջրարբի արտեր։ Ասկէ զատ բաւական թուով ալ անջրդի արտօրայք՝ բայց շատ բարեբեր։ Այս արտերուն մէջ՝ յիշուելու արժանի են Գըզըլ-Թօփրագ կոչուած արտերն, որոնք գրեթէ յարգի քանակութեամբ ցորեն կ'արտադրեն։ Գիւղը ընդհանրապէս ջրուտ է՝ բայց ոչ ճախճախուտ։ Գիւղին հարաւը կէս ժամ հեռու բարձր ժայռերու ներքեւէն կը բխի ահագին ջուր մը, զոր գիւղացիները «Ծամրգ Կէօվտէսի» կ'անուանեն։

Այս ահագին ջուրը արտօրայից մէջէն կ'անցնի, և երբ գիւղին մօտը կու գայ՝ կը բաժնուի երկու մասի, մեծագոյն մասը գիւղ կը վազէ, և մնացած մասը Կէրկէմէ(1)։ Սարմուսագլըի ջուրն ալ երկու մասի կը բաժնուի, մաս մը Վերին թաղ կ'երթայ, և երբ ժայռերու վրայէն սողոսկելով գիւղին ճիշդ վրան կը հասնի, անդ 15-20ի չափ փոքրիկ ջրվէժներ կը կազմէ, որք սքանչելի երեւոյթ մը կ'ընծայեն դիտողին աչքին, ասոնցմէ ոմանք ահագին աղմուկով մը քարանձաւներու տանիքներուն վրայ կը թափուին և ի վերջոյ փողոցներու մէջէն կ'երթան ու կը միանան ջուրի միւս մասին՝ որ Վարի թաղին մէջէն կ'անցնի, և գիւղին ծայրը փոքրիկ նեղուց մը կազմելով ամայի դաշտերու լռութիւնը աղմկելով կ'երթայ և կը միանայ Մելաս (Գարա Սու) գետին որ Կեսարիոյ մօտն է։ Գիւղը ունի նաև 10ի չափ անուշահամ աղբիւրներ, Իմամը, Իւզ Կէօզիւ, Բիմիտ, Դագնինի, Պայրամը, Բումլար Բունարը, Սէյտ, Մուսքաֆա, Գօնիք և Էրմէնի Բունարը: Ասոնցմէ զատ կան նաև գիւղին և պարտէզներուն մէջ 40-50ի չափ աղբերակներ (Վահան Կ. Քիւրքճեան, Փունջ, 1892, Դեկտ. 19, թ. 2337)։

(1) Այս գիւղը Սարմուսագլըէն քառորդ ժամ հեռու է։ Անոր նման լեռնաշղթային վրայ շինուած։ Բնակիչները Թուրք և Յոյն։ Յոյները հոն ունին ժայռերու վրայ սքանչելի դիրքով վանք մը, որուն մէջ յունարէն ձեռագիր Աւետարան մը կար, որ 1000 տարուան հնութիւն ունէր։ Այս Աւետարանը 800 ոսկիի ծախուած է (Երկաթեան, Բիւզանդիոն, 1901, Օգոստ. 26, թ, 1482)։ Այս աւետարանը գտնուած է 1896ին և գրուած է Զ. դարուն, յունարէն և ծիրանեգոյն մագաղաթի վրայ։ Զայն գնեց Ռուսիոյ Նիքոլա Բ. Զարը և նուիրեց Բեթրոկրատի կայս. հանրային գրատան (Ստանետարս, 30 Դեկտ. 1896. Բիւզանդիոն, 6 Յունվ. 1897, թ. 15)։ Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, 1899, էջ 602) Աւետարանին հնութիւնը կը բարձրացնէր Դ. դար և կ'ըսէր թէ գնումը կատարուած է ի փոխարէն տարեկան 50 ոսկի մշտատեւ հասոյթ ապահովելու։



Սարմուսագլը ի հնումն կը կոչուէր Սերմուսօն (Σερμούσον) ըստ Քիր. Լիվինտիսի (Յ. Վ. Յակոբեան, Բիւրակն, 1899, 602)։ Յետոյ կը կոչուէր Սարմբասգլը, որուն տեղացի Յոյները տոհմային ծագում մը յարմարցնելու համար, մէջ կը բերէին հին արձանագրութիւններ և կ'ուզէին հաստատել թէ Սարմբասգլը անունը Սիմոսեա բառին աղաւաղեալն է։ Իսկ Թուրքերը իրենց աւանդութիւններու վրայ յենելով կ'ենթադրէին թէ Սէրիմ-սագլը է բուն անունը տեղւոյն (Վահան Քիւրքճեան, Փունջ, 2337)։ Համիտեան շրջանին կոչուեցաւ Պիւնեանը Համիտ կամ Համիտիյէ:

Ունէր 600 տուն Թուրք, 120 տուն Յոյն և 54 տուն Հայ (Վ. Քիւրքճեան, նոյն) բնակիչ, վեց թաղերու բաժնուած։ Հայոց մեծամասնութիւնը Նէնի-Մահալլէ թաղին մէջ կը բնակէր, զոր նոր շինած էր. անոնք ձգելով լերան վրայի իրենց նախկին տուները, վախնալով ահագին ժայռերու անկումէն (Նոյն)։

Երկրորդ թաղը՝ որ կիսով ժայռերու վրայ էր, երեք ազգերէ կը բաղկանար։ Այս թաղին մէջ էր Հայոց Ս. Աստուածածին եկեղեցին, որ շինուած էր 1869ին՝ հին եկեղեցւոյն տեղը։ Աւագ սեղանը Ս. Աստուածածին, աջակողմեանը՝ Ս. Սարգիս, և ձախակողմեանը՝ Ս. Գէորգ։ Թուրքերը ունին հինգ մզկիթ թաղերու անունով։ Նշանաւոր է Ուլու Ճամին, ուր կան հնութիւններ։

Խանութները՝ անկանոն 30ի կը հասնին. խանութպանք մեծ մասը Թուրք, շատերը նպարավաճառ և այլք երկաթագործ։ Հայերը երկրագործ էին։ Ջրաղացները՝ թիւով 18 Թրքաց ձեռքն էին։ Թալասցի քանի մը հարուստ Յոյներ, Ամասիայէն Հայ վարպետ մեքենագործ մը բերելով, շինել տուած էին երկու ալիւրի գործարաններ։

1890ին Հայ դպրոցը փակ էր։

Տրդատ եպ. Պալեան, դպրոցին տարեկան ծախքին կէսը ինքն վճարել յանձն առաւ և Կեսարիոյ Կիւմիւշեան վարժարանի ընթացաւարտներէն մին զրկեց որպէսզի իբր ուսուցիչ պաշտօնավարէ, և բացաւ դպրոցը (Վահան Կ. Քիւրքճեան, Փունջ, թ. 2337), Մեսրոպեան անունով, որ 1901ին ունէր 35 մանչ և 5 աղջիկ աշակերտ և 75 ղրշ. ամսական ծախք, ամբողջութեամբ եկեղեցիին սնտուկէն հոգացուած։

Այս գիւղին մէջ 50-60 տարի առաջ այգի ու պարտէզ շատ քիչ կամ բնաւ չի կար։

1880ական թուականներէն սկսած են տեղացիք պարտէզներ շէնցընել, որթատունկ պարմանել և այգիներ առաջ բերել։

Սարմուսագլըի մօտ էին Կիկի իբր 100 և Սարը-Օղլան՝ իբր 120 տընւոր Հայ բնակիչով գիւղերը։

## Բ.

## ԳԱՂԱՏԻՈՅ ԹԵՄԻՆ ԿՑՈՒԱԾ ՎԱՅՐԵՐ

*Այս շրջանին մէջ միայն երկու հայաբնակ քաղաքներ կային, որոնք ինչպէս ըսի կը գտնուէին Էնկիւրիւի կուսակալութեան Գըրշէհիր Սանճագին մէջ, որ այսօր կուսակալութեան վերածուած է։*

*Ասոնք նոր գաղութներ և Կեսարացիներէ կազմուած համայնքներ ըլլալով հոգեւորապէս կապուած էին իրենց նախնական բնակավայրին։ Այս քաղաքներն էին։*

# VII

# ԳԸՐՇԷՀԻՐ

*Գըրշէհիր Գաղատիոյ կուսակալութեան համանուն Սանճագին կեդրոնը, կը կարծուի ըլլալ հիներու* Անտրովա *քաղաքը։ Ունէր 9000 բնակիչ, Թուրք, Հայ, և սակաւաթիւ Յոյն։*

*Հ. Ինճիճեան կու տայ ժԹ. դարուն սկիզբը շատ հետաքրքրական տեղեկութիւն մը որ կը լուսաբանէ Գըրշէհիր քաղաքին Կեսարիոյ առաջնորդութեան կապուած ըլլալուն պատճառը։*

*Անիկա կը խօսի Պօզուգի լիվային կամ սանճագին վրայ որ կը գտնուէր ԺԹ. դարուն սկիզբը Չափան-օղլուներու տիրապետութեան տակ, որոնք ինչպէս տեսնուեցաւ բաւական ազդեցիկ իշխանութիւն մը ունէին՝ մինչև Կեսարիոյ սահմանները տարածուած։*

*Պօզուգի գիւղերէն Էքրէք և Սըվզըն ենթակայ էին Կեսարիոյ առաջնորդութեան հետեւաբար գէթ մասամբ անոր կապուած էին։*

*Ասոնց հետ կապ մը ունեցած է նաև Գըրշէհիր հին ժամանակները, վասնզի ինչպէս Ինճիճեան կը հաստատէ* «Ի հնումն իշխանանիստ քաղաք Պօզօգի ըստ Ջիհաննիւմային էր Գըրշէհիր» (Աշխարհ. Ասիա, *Ա.* 297)։

*Գըրշէհիրի հիմնարկութեան ժամանակամիջոցը անծանօթ է։ Օսմ. պատմութեան մէջ կը յիշուի մասնաւորապէս* 1403*ին (հիճրէթ* 806) *Չէլէպի Սուլթան Մուհամմէտի* (1413-1421) *և Գարաման օղլուի միջև կնքուած համաձայնութիւն մը, որուն ինչ ինչ բացատրութիւններէն կը հասկցուի թէ Գըրշէհիր այնատեն ունէր կարեւորութիւն։*

*Ասկէ զատ կան, գաւառին ամէն կողմերը ցանուցիր աւերակներ, որոնց մեծ թիւը, արձաններու նրբութիւնը և փափկութիւնը, Յոյն և Լատին արձանագրութիւնները, կը հաստատեն այս երկրին հին ժամանակներու բարգաւաճումը* (Vital Cuinet, La Turquie d'Asie, 332)։

*Տրդատ եպ. Պալեան* (*ՀԱ.* 1898, *էջ* 139-140) *կը հաստատէ թէ տեսած է հոն արձանագրութիւններ մարմարեայ կամ աւելի ճիշդ՝ կճեայ յունարէն և լատիներէն։ Այսպէս Յովհաննէս Քիւչիւք-Յովհաննէսեանի տան վրայ կար յունարէն արձանագրութիւն մը, որուն պատճէնը հրատարակած է, ինչպէս նաև կիսատ լատիներէն արձանագրութիւն մը (նոյնպէս հրատարակուած) որ գտած է Գըրշէհիրէն 3 ժամ հեռու* Ղարաղուրդ *անուն ջերմուկին ընդարձակ պարիսպին տակ։ Այդ պարիսպը և անոր ներքին շէնքը խաչակիրներէն շինուած կը կարծուին։ Ան կճեայ մեծ քարի մը վրայ էր որ պարիսպին շինութեանատեն գործածուած էր, և քայքայուած ատեն երեւան եկած։*



*Գըրշէհիրի մէջ կ'ապրէին ըստ* Vital Cuinet*ի* 1500 *տուն իսլամ և* 123 *տուն Հայ, իսկ բնակչաց թիւն էր* 8462 *որուն* 7794*ը իսլամ,* 651*ը Հայ, և* 17*ը Յոյն։ Թէոդիկ Հայոց թիւը կը նշանակէ* 350 *տուն։*

*Գըրշէհիրի Հայերը հաւանօրէն գաղթած են Կեսարիայէն և այլ տեղերէ ոչ շատ հին ատեն։*

*Սիմէոն կաթ. Երեւանցի և Երեմիա դպիր Օշականցի* 1765*ին չեն յիշեր այս քաղաքը իբր հայաբնակ, թէև յիշուեցաւ (վերը* 528) *թէ հոն ապաստանած էր* 1204*ին Թէոդորոս Կեսարացի վկան։ Մեծ մասը կ'զբաղէին մետաքսագործութեամբ և ոսկերչութեամբ։*

*Ունէին եկեղեցի մը Ս.* Գէորգ *անունով, ինչպէս նաև* Հայկական *անուն վարժարան մը ուր կը յաճախէին* 1872-73*ին* 15 *մանչ և* 5 *աղջիկ. տարեկան ծախք* 2000 *ղրշ. ժողովուրդէն հայթայթուած և* 1901*ին* 130 *մանչ աշակերտներ և ունէին երեք ուսուցիչ։ Դպրոցին ծախքն էր* 650 *ղրշ. ամսական որուն* 300 *ղրշ.ը կը հոգար եկեղեցւոյ սնտուկը և* 350 *ղրշ.ը կը գոյանար թոշակներէն։*

*Գըրշէհիրի Հայերը* 1915*ի աղէտի տարին խումբ խումբ քշուելով սպանուած են չարաչար և գրեթէ իրենցմէ ոչ ոք ազատած է։*

*Այս անարկու սպանդին դերակատարները եղած են ոստիկանզօրաց հրամանատար Սա'ատուլլահ և Պիւրհանէտտին, ոստիկանապետ Նուման, ընդհանուր դատախազի օգնական Ալի Նազմի։*

*Իսկ աւարառութեամբ զբաղած են մասնաւորապէս Մօնսիր-օղլու Սիւլէյման, Սարը-քէհեա-զատէ Վէհպի, Սէյֆ Ալի-օղլու Գարա Ահմէտ, Գարագօլ Գօմանտանը Էտհէմ, հացագործ Իզզէթ, Պաղտատ օղլու Մօլլա Ահմէտ։ Իսկ Ահմէտ Չաւուշ որ Տարտանէլէն կը դառնար՝ մասնակցած է մանկանց կոտորածին։ Նահատակուողներուն մէջ էր նաև Գըրշէհիրի միակ քահանան՝ Աւետիս քհ. Ասլանեան, որ* 17 *տարիէ ի վեր կը քահանայագործէր հոս*(1) *(Թէոդիկ,* Գողգոթա)։

# VIII

# ՏԷՆԷՔ ՄԱՏԷՆ ԿԱՄ ՔԷՍՔԻՆ

*Տէնէք-Մատէն կամ Քէսքին՝ հիներու* Kiskisos*ը* (Ramsay, 304), *Գըրշէհիր սանճագին պատկանող միակ քաղաքն է որ կը պարունակէր Հայ բնակչութիւն, որուն թիւը* 1915*ին հասած էր* 440 *տունի։*

*Տէնէք Մատէն աւելի քան Գըրշէհիր առեւտրական կեդրոն մըն էր, վասնզի շուկան էր* 195 *գիւղերու, ամէնքն ալ թրքաբնակ։ Տէնէք Մատէնի գլխաւոր ճարտարարուեստն էր գորգագործութիւնը։*

*Հայերը նոր ժամանակներու մէջ հաստատուած էին հոն։* 1765*ին Սիմէոն կաթողիկոսի ցուցակին մէջ չէ յիշուած։ Իրենց եկեղեցին էր Ս.* Աստուածածին, *կառուցուած* 1874 (1291 *հիճ.) թուական ֆէրմանով մը։*

*Քաղաքին հայութիւնը ամբողջովին տեղահան եղած է, իսկ իրենց երէցը Մեսրոպ քհ. Աֆարեան երեւելի եղած է իր մարտիրոսական նահատակութեամբ։*

---

(1) *Ծնած է* 1 *Յունուար* 1856*ին ի Պրուն-Գըշլա (Պօղազլեան)։* 20 *Մարտ* 1883*ին ձեռնադրուած է Ս. Դանիէլի վանքը Ստեփան եպ. Սանտալճեանէ* 13 *տարի 'ի Պրուն-Գըշլա և մէկ տարի Սունկուրլու, և Գաղատիա պաշտօնավարելէ յետոյ փոխադրուած էր Գըրշէհիր։*

«Այս Կիւրիւնցի վառվռուն զարգացեալ եւ պերճախօս, 36 տարուան քահանան, տեղացի 150 Հայերու հետ կը քալէր մահու ճանապարհը, երբ Բէսնիէն մէկուկէս ժամ անդին, «Տէվէ Պաղըրսան» կոչուած ձորն հասնելնուն, առաջարկ կ'ըլլայ իրեն ընդունիլ իսլամութիւնը իբր միակ միջոց փրկութեան: Սակայն այս քաջարի քահանան արհամարհանօք կ'ունկնդրէ դահիճներուն կեղծաւոր խօսքերը միշտէն մէկ գաղափար նոյնքեալ անընդհատ. «մահ խնացեալ անմահութիւն է»: Կը խրախուսէ հետինները' սուրբ հաւատքնուն վրայ ամուր կենալ եւ սա կարկեցուցիչ պատասխանը կը ճակտէ սպառազէն Թուրքերուն. «Արարիչը ծներ է զիս Հայ քրիստոնեայ եւ այնպէս ալ անոր պիտի աւանդեմ հոգիս: Դո՛ւք եղաք արքայութ իմ Աստուածս...»:

Գաւազը գիւղէն Հանը Մէհմէտ այս սանձարձակ խօսքերէն զայրացած' սուրը կը մերկացնէ եւ անոր սիրտը կը մխէ խոկոյն:

Իրեն վկայակից կ'ըլլան իրեն բոլոր ուղեկիցները' եւ Տէվէ Պաղըրսան ձորը պահ մը կը նոյնանայ իր անուան կոչումին հետ, ծծելով անոնց ազնիւ արիւնը...» (*Թէոդիկ*, Գողգոթա):

## Գ.

## ԳՈՆԻԱՅԻ ԹԵՄԻՆ ԿՑՈՒԱԾ ՎԱՅՐԵՐ

*Կեսարիոյ արեւմտեան կողմը' և անոր մերձակայ Գոնիայի կուսակալութեան պատկանող մի քանի քաղաքներ ունէին Հայ գաղութներ ամէնքն ալ գրեթէ կեսարական ծագումով և այս պատճառով իսկ Կեսարիոյ թեմին կցուած:*

1907*ին երբ Գոնիա Առաջնորդութեան մը կեդրոն եղաւ, անոր իրաւասութեան ենթարկուեցան բոլոր կուսակալութեան մէջ գտնուած Հայերը, որով հետեւեալ քաղաքներն ալ բաժնուեցան Կեսարիոյ թեմէն:*

## IX

# ՆԻՅՏԷ ԿԱՄ ՆԻԿՏԷ

*Երբեմն Կեսարիոյ թեմին ամէնէն հեռաւոր վիճակը: Քաղաքը կառուցուած է* «ի զուարճալի եւ ի ջրաւէտ վայրի» *Գըզըլ Ըրմաք գետին վրայ (Հ. Ղ. Ինճիճեան*, Աշխարհ. Ասիա, *Ա. հտ., էջ* 319):

*Հին ատեն կը կոչուէր ըստ ոմանց* Նուսէ *որ կը յիշատակէ Պտղոմէոս: Ուրիշներ զայն կը նոյնացնեն* Կաստրայի *հետ:*

*Տիանա հին երեւելի քաղաքը կը գտնուէր* 12 *քիլոմէթր հարաւ արեւմուտք Նիկտէէն Քըզ-Հիսար կամ Ինհուզ (Քիլիսէ) Հիսար կոչուած տեղը* (Zimmerer):

*Վարչականապէս երբեմն առանձին փաշայութիւն (սանճագ) մըն էր, և իրեն ստորադաս ունէր եօթը գաւառ: Իսկ վերջերը մաս կը կազմէր Գոնիայի կուսակալութեան: Հիմա կուսակալանիստ:*

*Քաղաքը ամրաշէն քարակերտ պարիսպով մը շրջապատուած է և մէջն ունի հին բերդ մը ապառաժի վրայ, որ քաղաքին կողմէն շատ բարձր կ'երեւի (Ինճիճեան,* Աշխ. 319)*: Բերդին մէջ կայ միջնաբերդ մը աւելի բարձր քան առաջինը: Միջնաբերդին մէջ կը մնար պահակազօրքը ԺԹ. դարուն սկիզբը (Նոյն):*



*Նիկտէի բնակչութիւնը կը բաղկանար Թուրքերէ, Հայերէ և Յոյներէ: Թուրքերը ունէին* 11 *մզկիթներ քաղաքին և բերդին մէջ: Անոնցմէ մին շինած է Սուլթան Ալայէտտին Ռումի Սելջուկ վեհապետը հսկայ մէտրէսէի մը հետ: Ունի փառաւոր շուկաներ և բաղնիքներ: Քիչ մը հեռուն իբր արուարձան կը գտնուի Թաղամաս մը վերջէն շինուած:*

*Քաղաքին շուրջը կան շատ այգիներ և պարտէզներ որոնց արտադրութիւնները բազմատեսակ են և առատ: Քաղաքին դէմը կայ ընդարձակ վայր մը իբր զբօսատեղի, ուր կան հոսող ջուրեր և հովանաւոր սօսիներ: Քաղաքին շրջակայ բլուրներուն վրայ կը տեսնուին գետնափոր տեղեր, նման ընդերկրեայ գերեզմաններու (Նոյն):*

*Հայերը շատոնց հաստատուած են հոս: Արդէն տեսնուեցաւ թէ Նիկտէի և Պօռի շրջանները Սելջուկեանց շրջանին Հայեր հաստատուած էին Կիլիկիայէն գաղթելով (վերը* 534) *և նոյնիսկ այս շրջանները գոնէ ժամանակաւոր կերպով ենթարկուած էին Ռուբինեանց իշխանութեան (վերը* 582):

*Կարեւոր հայաբնակութիւն մը այս շրջանակին մէջ գոյութիւն ունենալուն անժխտելի փաստն է ԺԴ դարուն սկիզբը գոյութիւնը եպիսկոպոսական աթոռի մը որ պատմական Տիանայի անունը կը կրէր (տես վերը, էջ* 538)*: Բայց հաւանական է որ Ելտըրըմ Պայազիտ Սուլթանէն* (1381–1403) *այս շրջանին գրաւումէն յետոյ և Ֆաթիհ Մէհէմմէտ Բ.ի Գարամանի Հայերը տեղահանած ատեն, այս վայրերու Հայերը բոլորովին հեռացած ըլլան, կամ շատ աննշան թիւի մը վերածուելէ յետոյ նորէն բազմացած:*

*Իրենց վաղեմի բնակութեան փաստերն են ինչպէս ԺԴ. դարու Տիանայի եպիսկոպոսները, նաև իրենց եկեղեցիները և վանքը:*

*Այսպէս* 1670*ին* «ի քաղաքն Նիկսայու ի դուռն սբ. Աստուածածինին եւ սբ. Թորոսին եւ սբ. Կարապետին» *գրուած էր Սաղմոս մը Գրիգոր Կողոնեցիէ:*

Ս. Աստուածածինը *իրենց եկեղեցին էր որ կը մնար մինչև վերջը, անշուշտ նորոգութիւններով և վերաշինութիւններով, իսկ* Սբ. Կարապետի *հնօրեայ վանքին աւերակները ցոյց կու տային մինչև վերջերը, մինչ* Սբ. Թորոս *անհետ եղած էր:*

*Նիկտէ կը յիշուի* 1765*ին իբր Կեսարիոյ վիճակին երկրորդ քաղաքը (Սիմէոն Երեւանցի, Ջամբռ և Երեմիա դպիր Օշականցի):*

1886*ին Հայոց թիւն էր* 150 *տուն (Վտարանդին,* Մասիս, 3848)*: Ունէին նաև խեղճ դպրոց մը, ուր* 1872–73*ին կար* 60 *մանչ և* 10 *աղջիկ,* 1886*ին'* 80 *աշակերտ և մէկ պաշտօնեայ: Տարեկան ծախքն էր* 30 *ոսկի:*

Պարթեւեան վարժարանը 1901*ին ունէր* 205 *աշակերտ* (95 *մանչ և* 110 *աղջիկ),* 3 *ուսուցիչ և* 1 *ուսուցչուհի և* 700 *ղրշ. ամսական ծախք* 300 *ղրշ.ը եկեղեցիին անտուկէն և* 400 *ղրշ.ը թոշակներէն ստացուած:*

*Նիյտէի Հայերը մեծ մասամբ առեւտրականներ էին, գլխաւորապէս Կեսարիայէն գաղթած:*

*Նիյտէ թրքախօս էր:*

*Նիյտէի մէջ կային* 1872–73*ին* 5 *տուն Բողոքականներ, որոնք ունէին վարժարան մը* (1872-73. Գաւառական վիճակագրութիւն, 59):

## X

# ՊՕՌ ԿԱՄ ՊՈՐ

Նիկտէէն երկու ժամ հեռու, Գոնիայի ճամբուն վրայ քաղաք մըն էր Պօռ, Գըզըլ-Ըրմաքի վրայ, ձորի մը մէջ։

Քաղաքը ԺԹ. դարուն սկիզբը շրջապատուած էր հողաշէն ցած որմով մը։

Հոն էր երբեմն վառօդի արքունի գործարանը ուր 100ի չափ սանդեր կային (Ինճիճեան, Աշխ. Ասիա, Ա. էջ 320)։

Ոմանք կը կարծեն թէ այս քաղաքը Պտղոմէոսէն յիշատակուած Լիկաոնիոյ Կասպիա քաղաքն է, իսկ ոմանք զայն կը նոյնացնեն Արքեղայիս քաղաքին հետ որ կը գտնուէր Կապադովկիոյ մէջ Ալիս գետին վրայ (Նոյն)։ Հայերը շատոնց հաստատուած են այս քաղաքին մէջ։

Սիմէոն կաթողիկոս և իր գրագիրը Երեմիա դպիր Օշականցի, 1765ին կը հաստատեն թէ հոն Հայեր կային։

Հայերը կ'զբաղէին անագագործութեամբ, ոսկերչութեամբ և փերեզակութեամբ։

Պօռի Հայերը 1886ին 210 տուն էին։ Ունէին եկեղեցի մը, Սբ. Աստուածածին՝ վերակառուցուած 1834 (հիճ. 1250) թուակիր ֆէրմանով մը և վարժարան մը՝ Ստեփանոսեան որ յետոյ եղած է Արամեան ուր կը յաճախէին 1872-73ին՝ 40 մանչ և 1886ին՝ 60 և 1901ին՝ 70 (60 մանչ և 10 աղջիկ) աշակերտներ։

Ամսական ծախքը իբր 150 ղրշ. կը հոգացուէր եկեղեցւոյ սընտուկէն։

## XI

# ՆԵՎՇԵՀԻՐ

Նէվշէհիր սիրուն ու նոր քաղաք մըն է, բլուրի մը զառիվարը, այնպէս որ դիմացէն կրնաս համրել իւրաքանչիւր տուն։ Շուրջանակի քաղաքը 4 ժամ պատուած է այգիներով որոնց թիւը ըստ կառավարական արձանագրութեան 27000 կտոր էր։ Առողջ օդ, առատ ու զով ջուր ունի (Բիւզանդիոն, 1899, Հոկտ. 11, թ. 900)։

Նշանաւոր շէնքերն են մզկիթը, Թուրքերու վարժարանը և Յունաց եկեղեցին և հին ամրոցը՝ որ կը տիրէ բարձունքէն քաղաքին։ Վարը կը գտնուի ձորամէջ մը, բարձր բարտիներով եզերուած լայն ճամբայով մը, որ ցածը գտնուելուն համար ձոր կ'ըսուի, ուր տեղ տեղ ջուր կը բխի և կ'սկսի հոսիլ ու հետզհետէ շատնալ։ Այդ ձորին երկու քովերն կան պարտէզներ իրարու վրայ աստիճան աստիճան բարձրացած պատերով։ Այդ պարտէզները կ'ոռոգուին իրենց յատուկ ու մշտահոս ջուրերով։ Այս զմայլելի տեսարանը կ'երկարի ժամէ մը աւելի տեղւոյն վրայ (Բիւզանդիոն, թ. 901)։

Նէվշէհիր արդարև դրախտ մըն էր, այգին և բուսեղէնն առատ։

Նէվշէհիր ի հնումն կը կոչուէր Նիւսա և հայրենիքն էր Գրիգոր Նիւսացւոյն ըստ Քիր. Լէվիտիսի (Բիւրակն. 1899, էջ 602)։

Մորդտման՝ Նէվշէհիրը կը համարէ հիներու Մուկարան և անոր մերձակայ Նար գիւղը Նիւսան (Nyssa) և արդարև Նէվշէհիր նոր քաղաք



մըն է թերեւս անհետացած հին քաղաքի մը տեղը կառուցուած՝ 1720ին Եպարքոս Տամատ Իպրահիմ փաշայի կողմէ։

Հ. Ղուկաս Ինճիճեան այս քաղաքը կը կոչէ Նազիա, և կը գրէ թէ «Բնակիչք են Տաճիկք եւ Հայք, որք ունին եկեղեցի Ս. Թորոս բաց մասին վիմափոր եւ բաց մասին շինեալ» (Աճառե. Ա. 316)։ Այս տողերը կը յայտնեն թէ քաղաքին կառուցումէն ոչ շատ յետոյ Հայերը հոն հաստատուած և կիսաշէն եկեղեցի մը ունեցած են։

Իբր կեսարիոյ վիճակ ԺԸ. դարուն Զամբռ չի յիշեր այս քաղաքը ինչ որ կը հաստատէ թէ քաղաքը դեռ այն ատեն հայաբնակ չէր։

Հայերը աննշան դիրք ունէին այս քաղաքին մէջ, ուր անցեալ դարուն կէսերը հազիւ 70 տուն և վերջը՝ մօտաւորապէս 150 տնուոր էին ըստ Ե. Երկաթեանի (Բիւզանդիոն, թ. 901), մեծ մասը մաղագործ բոշաներ, իսկ փոքր մաս մըն ալ վերջէն հաստատուած կեսարացիներ։ Կեսարացիները հոն հաստատուելէ յետոյ շինած են 1860 (հիճր. 1276) թուականով ֆէրմանի մը համաձայն, գեղակերտ Սբ. Լուսաւորիչ անուն եկեղեցի մը որ 1899ին տակաւին անծեփ էր։

Եկեղեցին՝ նախ քան իր այս նորոգութիւնն իսկ երբ մատուռ մըն էր, ունէր իբր կալուած 3 տուն և մէկ փուռ, տարեկան 15-20 ոսկի հասոյթով մը։

Նէվշէհիրի Հայերը ունէին դպրոց մը Հայկազնեան որուն կ'աշակերտէին 1872ին 30 մանչ և 10 աղջիկ, 1886ին 24 և 1901ին՝ 75 երկսեռ աշակերտ։ Դպրոցը ունէր երկու ուսուցիչ և 250 ղրշ. ամսական ծախք։

## XII

# ԱԳՍԱՐԱՅ

Գիւղաքաղաք Գոնիայի կուսակալութեան ներքև, որ կը գտնուի կեսարիոյ հարաւ-արեւմտեան կողմը՝ 28 ժամ հեռու։ Դիրքը ցած ու դաշտային է, միայն հարաւ-արեւելեան կողմը կը գտնուի լեռնադաշտ մը, որուն բարձրագոյն գագաթը կը կոչուի Հասան տաղ։ Օդն ամառը շատ տաք է և վատառողջ։ Տուները աղիւսաշէն են և փլփլուն։ Փողոցները աղտոտ և տղմոտ։ Ագսէրայի մէջտեղէն կ'անցնի Ուլու-Ըրմազ անուն գետակ մը, որ թէ գիւղաքաղաքին և թէ բոլոր շրջակայքին բարիքը կը համարուի, վասնզի ուրիշ ջուր չըլլալով, ամառը կը գործածուի արտօրէից ոռոգման համար, իսկ ձմեռը կը թափի Թուզ-Կէօլի մէջ։ Բերքերն են արմտիք, իւղ, բուրդ, պրօն։ Ցորենը յարգի է։

Քաղաքը ունէր իբր 1070 տուն բնակիչ, Թուրք, Հայ, և քիչ թուով Չէրքէզ, Թաթար և Յոյն։

Ըստ աւանդութեան եօթը անգամ շինուած է Ագսէրայ հինին աւերակներուն վրայ։ Մէջն ու շուրջը լի են բազմաթիւ հին փլատակներ, եկեղեցիներու և վանքերու մնացորդներով։ Ոմանք զայն կը նոյնացնեն հիներու Լիւստրա քաղաքին հետ։ Ռամսէյ կը կարծէ թէ անիկա կը գտնուի տեղը Կարսաւրա կամ Գարսաւրա գիւղաքաղաքին որ Կապադովկիոյ Լիկաւոնեան սահմանին վրայ կը գտնուէր և որ երբեմն մայրաքաղաքի դիրքին բարձրացաւ, երբ հոն հիմնեց Կապադովկիոյ վերջին թագաւորը՝ Արքեղայիս քաղաքը։ Այս քաղաքը յետոյ եղաւ Հռոմէական գաղութ մը և բաւական կարեւոր կեդրոն մը։

Թամաէյ (էջ 285) ասոր մօտը կը դնէ Նազիազը, որ կը համապատասխանէ այսօրուան Ագսարայի մերձակայ Վիրան Շէհիրի որ 15 քիլոմէթր հեռու էր այս քաղաքէն Հասան կամ Հասսար տաղի ստորոտը։

Ագսարայի Հայերը բաւական հին ատեն հոն հաստատուած պէտք է ըլլան, վասնզի թէ՛ Սիմէոն կաթողիկոսէն և թէ՛ Երեմիա Օշականցի գիրքէն 1765ին կը յիշատակուի քաղաքը։

Հայերը 120 տուն էին։ Ընդհանրապէս իրենց ձեռքն էին վաճառականական գործերը։ Կան կարեւոր թուով ոսկերիչներ, երկաթագործներ, կօշկակարներ, հիւսներ, պայտարներ և քանի մը երկրագործներ ու պարտիզպաններ։ Մեծ մասամբ գաղթած են Նիկդէէն, Կեսարիայէն և անոր շրջականերէն։

Հայերը ունէին եկեղեցի մը յանուն Ս. Աստուածածնի և դպրոց մը անանուն որ 1872–73ին ունէր 40 աշակերտ և 1200 ղրշ. տարեկան ծախք։ Սակայն յետոյ գոցուած է։ 1895ին կը վերաբացուի Թորգոմեան(1) անունով (Բնաշխարհիկ Բառարան)։ Հոն կը յաճախէին 105 աշակերտներ ամէնքն ալ մանչ, 3 ուսուցիչներով և 400 ղրշ. ամսական ծախքով (100ը՝ եկեղեցիէն և 300ը՝ թոշակէ գոյացած)։ Առաջին ուսուցիչը եղած է Ս. Կարապետի աշակերտներէն Արտաշէս Վարդերեսեան։ Քիչ յետոյ կը գոցուի և 1897ին կը բացուի կրկին (Բիւզանդիոն, 163)։

Ագսարայի մէջ կային նաև Հայ-Բողոքականներ։ Ասոնց թիւը 1872–73ին հազիւ 8 տուն էր, սակայն յետոյ մինչև 20 տունի բարձրացած էր։ Անոնք ունէին 1879ին կառուցուած ժողովարան մը որ իբր դըպրոց ալ կը գործածուէր։

Ագսարայի Հայերը Թրքախօս էին։

## XIII
# ԷՐԷՅԻԼ ԿԱՄ ԷՐԷԿԼԻ

Քաղաք լեռնային Կիլիկիոյ, որ վարչականապէս Գոնիայի կուսակալութեան կցուած էր, և կրօնապէս Կեսարիոյ առաջնորդութեան։ Գայմագամի մը նստոց էր և փոքր քաղաք մը։ Կը գտնուի Պուլկար և Գարաճա լեռներուն միջև, դալարազուարթ բլուրի մը վրայ։ Ջուրը, այգիներն ու պարտէզները խիստ առատ և բարեբեր են։

Քաղաքը ունի հրաշալիք մը։ Կէս ժամ հեռու վայրէ մը գաղջ ջուր մը կը բխի և անմիջապէս կը քարանայ և այս քարացումէն բլուր մը ձեւացած է և հետզհետէ մեծնալու վրայ է (Յ. Ս. Թէլլեան, Բիւզանդիոն, 1901 Օգոստ. 8, թ. 1467)։

Ունէր 20000ի մօտ բնակիչ՝ մեծամասնութիւնը Թուրք։ Կային նաև Հայեր (120–130 տուն) և Յոյներ (40–50 տուն)։

Պատմիչները կ'աւանդեն թէ «Լեւոն էառ զԱռակլէա եւ զհաւրիս եւ ընդ զանձուց փոխանակեաց բազում ամրոցս եւ դղեակս»: Ուրեմն Հայերը կարճատև իշխանութիւն մը ունեցած են Էրէկլիի (Առակլի=Հերակլիա) վրայ։

Սուլթան Կայ Քաուս պատերազմ մղեց Առակլիի համար։ Հեթումի օրով Հայոց ձեռքը չէր քաղաքը։

(1) 1901ին կազմուած վիճակագրութեան մէջ կը կոչուէր Յակոբեան:



Էրէյլին կը համարուի հին Կիբիստրան որ Կապադովկիոյ թեմ էր։

Քաղաքը Կիլիկեանի ձմերանոցը եղած է, երբ ան կուսակալ էր Կիլիկիոյ և երկիրը կը պաշտպանէր Հայերու և Պարթեւներու դէմ (Ալիշան, Սիսուան, էջ 153–176)։

Հայերը վաղուց հոն բնակութիւն ունէին հաւանօրէն։

Սիմէոն Երեւանցի կաթողիկոս և իր գրագիրը՝ Երեմիա Օշականցի դպիր, 1765ին կը յիշատակեն այս քաղաքը։

Հայերը հոս 150–180 տուն էին 1910ին և ունէին Ս. Աստուածածին անուն եկեղեցի մը և Թուրինեան(1) անունով վարժարան մը՝ 50 աշակերտներով և 2 ուսուցիչներով ու ամսական 250 ղրշ. ծախքով (100ը եկեղեցւոյ սնտուկէն և 150ը թոշակներէ)։

Աղջկանց վարժարան չունէին մինչև 1910, երբ Անատոլուի երկաթուղւոյ գծին շինութեան շահագործման Էրէյլիաբնակ պաշտօնեաները, որոնք դպրոցասէր երիտասարդներ էին, աղջկանց վարժարանին շէնքին հակառողջապահիկ վիճակն ու մանկապարտէզի մը չգոյութիւնը նկատի առնելով, եկեղեցիին դէմը, Յունաց եկեղեցիին կից, ազգային ընդարձակ գետնին վրայ ձեռնարկեցին հիմնարկել վարժարան մը, աղջկանց վարժարանի և մանկապարտէզի յատուկ (Բիւզանդիոն, թ. 4201)։

Չեմ գիտեր թէ յաջողեցա՛ն։

## XIV
# ԻՒՐԿԻՒՊ

Իւրկիւպ, պտղառատ, այգեւէտ աւան մը, Գոնիայի կուսակալութեան մէջ որ յետոյ մաս կազմեց Նիկտէի կուսակալութեան, իսկ 1933 Յունիս 1ին կցուեցաւ Կեսարիոյ և դարձաւ այդ կուսակալութեան ենթակայ գաւառի մը կեդրոնը։

Իւրկիւպի մէջ կը գտնուին բազմաթիւ բրգաձև շինուածքներ յորձաքարէ, ոմանք ցած, ոմանք բարձր, և թատրոնի կը նմանին, իրարու վրայ սենեակներով, որոնք ունին դուռներ, սանդուխներ, պատուհաններ, և ամէնուն գագաթը պատկերներ։ Այս հնութիւնները ցոյց կու տան թէ ան հին քաղաքի մը տեղը կառուցուած էր։ Կը կարծուի թէ հիներու Argustana քաղաքն էր։

Երբեմն աւելի թուով Հայեր պարունակած ըլլալ կը թուի։ Այս քաղաքին Հայերն ալ 1573ին Սուլթան Սէլիմ Բ.ի կարգադրութեամբ բռնի տարագրուած են Կիպրոս (Պիմէն Զարդարեան, Ճարտարապետ Մեծն Սինան, տես Գրպանի Տարեցոյց, 1932, էջ 199–206)։ Հետզհետէ ցրուած են։ 1886ին միայն վեց տուն էին։ Վերջը անոնք ալ չեն մնացած։

Ոչ եկեղեցի և ոչ դպրոց ունէին։

(1) 1872–73էն անանուն է և ունի 60 մանչ աշակերտ։

## XV

## ՋԱԻՍՈՆ (=ՍԻՆԱՍՕՆ?)

1553*ին գրուած Աւետարանի մը մէջ Պետրոս քհ.* «Պարգեւեցի զՍ. Աւետարան. զոր ստացայ ի հալալ արդեանց իմոց, եւ ետու ի գեղն իմ **Զաւսոն**, զի կայցէ յեկեղեցին ի **Ս. Քրիստափոր**...»։

*Ինչպէս կը տեսնուի ասկէ երեւան կու գայ գիւղ մը որ ունէր Հայ բնակչութիւն, հոն ծնած և ուսած Հայ քահանայ և իր աղօթարանը յանուն* Ս. Քրիստափորի։

*Ո՞ւր է արդեօք այս գիւղը որ միայն մէկ անգամ կը յիշատակուի։*

*Ինճիճեան կը յիշատակէ* Սինասօն *անուն գիւղ մը Ինճէսու Նահիյէի մէջ, որուն համար կ'ըսէ.* «Անկանի ընդ մէջ Ինճէսույի եւ Նիկտէի, ոչ այնչափ հեռի ի Գայսէրիոյ ընդ արեւմուտս. ձկնավաճառք Ստանպօլու ըստ մեծի մասին են ի գեղջէ աստի։ Ի հնումն կոչէր **Նազիանզոս** յերկրորդ Կապադովկիա, որ յիշատակի առ Սոկրատայ եւ 'ի վարս Գրիգորի Նազիանզու, այլ չիք ինչ յիշատակութիւն ի գիրս հեթանոսաց։ Սուրբն Գրիգոր եղեւ եպիսկոպոս սորա ի 328. աստ ծնաւ որդի նորա հռչակաւոր Գրիգոր Աստուածաբան եւ երբեմն երբեմն նստաւ յաթոռ սորին» (Աշխարհ. Ասիա, *Ա. էջ* 317-318)։

*Ինճիճեան սակայն երբեք չի յիշեր Հայ բնակիչ։ Հաւանօրէն չատոնց դադրած էր հայաբնակ ըլլալէ։*





# Դ. ՄԱՍ

# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### Ա.

### ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ

*Կրօնքը Արեւելքի մէջ ապրող ազգերու գլխաւոր մտազբաղումներէն մէկը և իրենց կեանքին մէջ ամէնէն կարեւոր դերը կատարող ազդակը եղած է։*

*Այս տեսակէտով անիկա կը ներկայացնէ մասնաւոր չահեկանութիւն մը իւրաքանչիւր գաղութի հաւաքական կեանքին մէջ։*

*Կեսարիոյ Հայոց կեանքին մէջ ալ կրօնքը և անոր կապուած բոլոր հաստատութիւնները և կազմակերպութիւնները անխուսափելիօրէն կարեւոր դեր մը պիտի կատարէին, և գլխաւոր առանցքը պիտի կազմէին Հայ համայնքային կեանքին, անշուշտ այն օրէն որ ազատ եղաւ պաշտամունքը։*

*Այդ ազատութիւնը Կեսարիոյ Հայերը միայն ԺԱ. դարուն կ'ստանային, երբ կը փրկուէին Օրթոտոքս մոլեռանդութեան ուղղակի ազդեցութենէն։*

*Արդարև այս տեսակ կազմակերպութեան մը գոյութիւնը առաջին անգամ երկիրը Իսլամ տիրապետութեան ենթարկուելէն յետոյ է որ ծնունդ կ'առնէր (տես վերը* 535-541*), ուստի ԺԱ. դարէն առաջ Հայ կրօնական հաստատութիւն, եկեղեցի, վանք և աղօթարան, ինչպէս նաև Հայ եկեղեցւոյ սեփական առանձին վարչութիւն փնտռել կարելի չէ։ Սակայն երբ Հայ նախկին թագաւորներու հետ տեղափոխուող բազմութիւններու ապաստանի վայրերէն մէկը եղաւ Կեսարիա և իր շրջակայքը, ոչ թէ կը կարծենք այլ համոզումով կը հաւատանք թէ Հայերը այդ ժամանամիջոյին պէտք է ունեցած ըլլան իրենց եկեղեցիները և անոնց շուրջը բոլորուող ծխական համայնքները։ Վասնզի Հայկական ցեղային նկարագրին անբաժան մասն էր անմիջապէս իր հաստատուած տեղերուն մէջ իր առաջին մտածութիւնը ընել Հայ պաշտամունքին մատուցումը ապահովելու համար Հայ Եկեղեցիի մը հիմնարկութիւնը։ Ասոնք մեր Եկեղեցական Վարչութեան մէջ ընդունուած վաղեմի կարգաւարքին համաձայն կը ներկայացնեն ինքնապահ միութիւններ, որոնց հաւաքականութիւնը կամ միացումը կը կազմէ եկեղեցական վիճակ մը կամ եպիսկոպոսական թեմ մը։*

*Ուստի առաջին ու նախնական կորիզը կրօնական կազմակերպութեան եկեղեցին է, իր նիւթական ու բարոյական իմաստով, և առանց եկեղեցիներու գոյութեան կարելի չէ վիճակային կազմակերպութիւն մը երեւակայել։*

# 1. ԵԿԵՂԵՑԻՆԵՐ ԵՒ ԱՂՕԹԱՐԱՆՆԵՐ

ԺԱ. դարուն Կեսարիոյ մէջ և շրջակայքը հիմնուած եկեղեցիներուն վրայ դժբախտաբար մեզի չէ հասած ոևէ տեղեկութիւն։ Միայն այդ շրջանէն գիտենք պատմութենէն թէ Գագիկ Բ. շինած էր Պիզուի մէջ Ս. Խաչ վանքը։

Ալփասլանի գրաւումէն (1067) և Դանիշմանդեանց տիրապետութենէն յետոյ ԺԱ. դարուն շինուած Հայ եկեղեցիները պահեցին անշուշտ իրենց գոյութիւնը ժողովուրդին հետ։ Առանց սոր անմեկնելի պիտի մնար 1091ի այցելութիւնը Բարսեղ Անեցի Կաթողիկոսին։

Սակայն դժբախտաբար ոչ մէկ հետք ու մնացորդ մեզի հասած է այս շրջանի Հայ եկեղեցիներէն, որոնք անհետ կորած են Բիւզանդական Կեսարիոյ հետ որ ԺԱ. դարուն վերջերը աւերակի վերածուեցաւ։ Նոր կամ արդի Կեսարիոյ հիմնադիրը Դանիշմանդ Մուհամմէտ իբն Կիւմիւշթէկին (1124–1143) «Քակեաց բազում եկեղեցիս» (Միխայէլ Ասորի, 414) և «շինեաց զԿեսարիոյ պարիսպն»։

Արդեօք այդ բազում եկեղեցիներուն մէջ կայի՞ն նաև Հայկական եկեղեցիներ։ Դժբախտաբար այս մասին ո՛չ մէկ լուսաբանութիւն և ներելի չէ ոևէ ենթադրութիւն։ Սակայն ո՛չ իբր ենթադրութիւն այլ իբր իրողութիւն վստահօրէն կրնանք ըսել թէ Դանիշմանդ վեհապետին Նոր Կեսարիան կառուցանելէն ոչ շատ հեռու ժամանակի մը մէջ Հայերը այդ Նոր քաղաքին մէջ ալ ունեցած են իրենց եկեղեցին կամ աղօթարանը, վասնզի հազիւ յիսուն տարիներ վերջը, 1179ին, կը հանդիպինք անունին պատմութեան յիշատակած առաջին Կեսարիոյ հայ արքեպիսկոպոսին՝ Յովհաննէսին, երբ արդէն քաղաքը Ռումի Սելջուկներու տիրապետութեան ենթարկուած էր տասը տարիներ՝ այսինքն 1169էն ի վեր (Միխայէլ Ասորի, 458)։

Արդ, տրուած ըլլալով որ Ռումի Սելջուկեանք իրենց հպատակ քրիստոնեաներու նկատմամբ բարեացակամ եղած են, և Հայ եպիսկոպոսի մը գոյութիւնը կ'ենթադրէ անխուսափելիօրէն հայ համայնք մը իր եկեղեցիներով, հետևաբար ամենամեծ հաւանականութեամբ Հայերը այդ թուականէն առաջ արդէն ունէին արդի Կեսարիոյ մէջ, կարելի է նոյնիսկ քաղաքին պարիսպներուն մէջ, իրենց սեփական եկեղեցին կամ եկեղեցիները, որոնց ո՛չ անունը գիտենք, ոչ ալ ե՞րբ և ո՞ւր կառուցուած ըլլալը։

1. Ս. ԳՐԻԳՈՐ ԵԿԵՂԵՑԻ.— Ձեռագիրի մը յիշատակարանէն լոյս մը կը քաղուի որ սակայն կարելի չէ իբր հաստատ փաստ ներկայացնել։

Եթէ իմ հասկցածս սխալ չէ, հազիւ 12 տարիներ յետոյ Կեսարիոյ առաջին ծանօթ Արքեպիսկոպոսին անունը յիշուելէն, հետևաբար ժամանակակից անոր, Հայ եկեղեցի մը կը յիշուի Կեսարիոյ մէջ Ս. Գրիգոր անունով, «Ի թուականութեանս Հայոց ՈԽ (640+551 = 1191)» գրուած է Աւետարան մը «Ձեռամբ քրիստոսասէրի նուաստ կրաւնաւորի եւ անյարմար գրչի յանուն քահանայի Գորգոյ եւ իւր ծնողացն եւ եղբարցն փոխեցելոցն առ Քրիստոս Գրիգորոյ եւ սուրբ քահանային Առաքելիս որ ստացաւ զսա իւր կամաւոր յաւժարութեամբ եւ այլ աստուածախօս պատուիրանս եւ զսուրբ Գրիգոր անուն Աստուծոյ եւ քաւարան ամենայն հաւատացելոց ի Կեսարիայ յիւր վաստակոց զոր ինչ եւ ջանայի մարմնաւոր հոգւոյ տայր...» (տես Արարատ, 1910, էջ 884)։ Հաւանօրէն պէտք է կարդալ այս յիշատակա-



րանին վերջին մասը «ստացաւ զսա իւր կամաւոր յաւժարութեամբ եւ այլ աստուածախօս պատուիրանս եւ ԵՏ զսուրբ Գրիգոր անուն Աստուծոյ եւ քաւարան ամենայն հաւատացելոց ի Կեսարիայ յիւր վաստակոց եւայլ...»:

Այն ատեն կարծեմ թէ յիշատակարանին իմաստը ըմբռնելի կը դառնայ, վասնզի Գէորգ քհ., ձեռագրին գրիչը, իր անունով ինչպէս իր հանգուցեալ ծնողքին և եղբայրներուն Գրիգոր և Առաքել քհ.ին —որ ստացած էր այս Աւետարանը իր յօժար կամքով և այլ աստուածախօս գիրքեր— տուած կ'ըլլայ Կեսարիոյ Ս. Գրիգորին «անուն Աստուծոյ եւ քաւարան ամենայն հաւատացելոց»:

Ես այս տողերը կը համարեմ ակնարկութիւն մը Ս. Գրիգոր անուն եկեղեցիի մը։

Գուցէ կը սխալիմ, սակայն մինչեւ հակառակը հաստատող փաստ մը երևան գալը Կեսարիոյ Հայոց ծանօթ առաջին եկեղեցին կը համարեմ այս Ս. ԳՐԻԳՈՐ ԵԿԵՂԵՑԻՆ, որ իր գոյութիւնը կը կարծեմ թէ պահած է մինչև ԺԷ. դար, վասնզի 1663-1664 թուականներով կը յիշուի Տօնացոյցի մը յիշատակարանին մէջ (տես Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Հալէպի, 211) անգամ մը իբր Ս. Գրիգոր Լուսաւորչի «վանք» և անգամ մը առանց այդ յաւելուածին։

Այս յաւելուածը չի կրնար շփոթեցուցիչ հանգամանք մը ունենալ, վասնզի շատ անգամներ քաղաքներու մէջ գտնուած եկեղեցիներն ալ «վանք» կոչուած են։ Միայն գիտելի իրողութիւն մըն է որ 1618ին Սիմէոն դպիր Լեհացի, երբ Կեսարիա կ'այցելէ չի յիշեր այս եկեղեցին։ Կը խորհիմ որ կրնայ հին Ս. Գրիգոր եկեղեցին քանդուած ըլլալ և 1618էն յետոյ կառուցուած ըլլայ նոր մը նոյն անունով, նախկին տեղւոյն վրայ կամ քաղաքին մէկ ուրիշ տեղը։

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիի մը գոյութեան աւանդութիւնն է թերևս որ պատճառ եղած է տեառնագրելու այս անունով Կեսարիոյ Նորագոյն եկեղեցին, որ այսօր միակն է։

2. Ս. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ.— Կարելի չէ պնդել թէ Հայերը այդ շրջանին միայն մէկ եկեղեցի ունէին Կեսարիոյ մէջ, երբ Կեսարիոյ և շրջակայից մէջ կը ներկայացնէին պատկառելի համայնք մը և ունէին նաև վանքեր, ինչպէս հռչակաւոր Ս. Կարապետը և Ս. Գրիգոր Նիւսացին։

Այսպէս 1206ին գրչագրեալ ձեռագիր Աւետարանի մը յիշատակարանին մէջ կը կարդանք թէ անիկա աւարտած է «ի գաւառս Կեսարիոյ Կապադովկացւոց ի հռչակաւոր անապատս սրբոյն Կարապետի Յովհաննու, եւ սրբոյն Ստեփաննոսի նախավկային եւ սրբոյն Թէոդորոսի եւ սրբոյն Մեռկերիոսի զինաւորի եւ այլ բազմահաւաք սրբութեանցս»:

Հոս երևան կու գայ թէ Գրիգոր Նիւսացիի վանքէն յետոյ Հայերը տէր դարձած էին երկրորդ վանքի մը և թերևս ուրիշ աղօթարաններու, յանուն Ս. Ստեփաննոսի, Թէոդորոսի և Մեռկերիոսի, որոնց եկեղեցիներ թէ՞ նշխարներ ըլլալուն մասին հաստատ կռուան մը չունինք, սակայն գիտենք թէ հոն մեծ թուով Հայեր կային նոյն թուականին և անոնք ունէին Արքեպիսկոպոս մը (Աղարիա) և Անանիա Սեբաստացի կաթողիկոս հոն կ'այցելէր (1204) իբր իր վիճակը և իբր քաղաք մը՝ որուն բնակիչները նպաստած էին իր հակաթոռ կաթողիկոսութեան։ Առանց եկեղեցիի չէին անշուշտ անոնք և հաւանա-

կան է որ 1191ին գոյութիւն ունեցող Ս. Գրիգոր եկեղեցիէն զատ ուրիշ մըն ալ ունեցած էին, քիչ յետոյ, վասնզի 1275ին «ի մայրաքաղաքս Կեսարիոյ ընդ հովանեաւ սբ. Ստեփանոսի» ձեռագիր մը կը գրուի (Ցուցակ Ձեռագրաց Վենետկի. Բ. 872)։

Այս Ս. ՍՏԵՓԱՆՈՍ եկեղեցիի մասին ո՛չ մէկ տեղեկութիւն ունինք սակայն ո՛չ ուրիշ կողմէ և ո՛չ ալ աւանդութենէ։

Սիմէոն դպիր Լեհացի, որ 1617ին Կեսարիա այցելած է, կը վկայէ թէ կային Կեսարիա «եկեղեցիք յոլովք որպէս ի Ստամպօլ, բայց աւեր, միայն նշմարանքն կ'երեւան» (ՀԱ. 1935, էջ 91)։ Ո՞վ կրնայ ապահովել թէ այդ աւերեալ և միայն հետքերը երեւցող եկեղեցիներուն մէջ չէին նաև Ս. Գրիգոր և Ս. Ստեփանոս եկեղեցիները։

3. Ս. ՄԵՐԿԵՐԻՈՍ ԶԻՆԱՒՈՐԻՆ ԵԿԵՂԵՑԻՆ.— Ինչպէս տեսնուեցաւ 1206ին գրչագրեալ Աւետարանին յիշատակարանին մէջ յիշուած էր «սրբոյն Մեռկերիոսի զինւորին» անունը, որ յիշատակուած կը տեսնենք նաև 1552ին, 1610ին և 1621ին գրուած ձեռագիրներու մէջ։ Այս եկեղեցին ե՞րբ կառուցուած, ինչո՞ւ և ի՞նչպէս անհետացած ըլլալը բոլորովին անյայտ է, սակայն իր մասին տեղեկութիւններ հասած են մեզի։

Տրդատ եպ. Պալեան (տես Հայ վանօրայք, էջ 87) կ'ըսէ թէ Կեսարիայէն դէպի արեւելք, կէս ժամու չափ հեռաւորութեամբ բլրակի մը առջև տափարակ տեղւոյ մը վրայ կառուցուած էր Ս. Մերկերիոսի վանքը, և կը կարծէ թէ անիկա տեղն է ԺԲ. դարուն յիշատակուած Ս. Թէոդորոսի և Ս. Մերկերիոսի անունով վանքի մը։

Այս կարծիքին որքան յեղակարծ ըլլալը ցոյց պիտի տամ քիչ յետոյ։ Սակայն անհաւանական չեմ նկատեր որ Հայոց գերեզմանատան մէջ միայն հիմերը մնացած չէնքը ուր ուխտի կ'երթային Ս. Մերկերիոսի տօնին օրը, Կեսարիոյ և շրջակայ գիւղերու Հայերը և հոն մատաղ կ'ընէին և պաշտամունք կը կատարէին, ըլլայ Ս. Մերկերիոս զինուորի եկեղեցին որ կը յիշատակուի ԺԶ.-ԺԷ. դարերուն, սակ իբր եկեղեցի և ո՛չ թէ իբր վանք։ Արդարև Սիմէոն դպիր Լեհացին կը հաստատէ թէ «ի հարաւակողմն (ոչ թէ Արևելք ինչպէս ըսած է Պալեան եպ.) պարիսպն դուրսն մեծ եկեղեցի Մեռկերիոսի զինւորին. որ եւ գերեզմանն անդ է. եւ նա հանգած է. փոքր դուռ մի մնացեալ է միայն. սուրբ գերեզմանին վրայ խորան, զոր ամէն երկուշաբթի օր ուխտ կ'երթայ բոլոր քաղաքն խնկօք եւ մոմեղինօք» (ՀԱ. 1935, էջ 91)։

Ուրեմն Ս. Մերկերիոսի եկեղեցի մը կար Կեսարիոյ մէջ, որ իբր ուխտատեղի կը պահէր իր նշանակութիւնը տակաւին ԺԹ. դարուն սկիզբը, վասնզի Հ. Ինճիճեան կ'ըսէ թէ «արտաքոյ քաղաքին իբր նետընկեց մի՛ է եկեղեցի քայքայեալ յանուն սրբոյն Մերկերիոսի, եւ այլ եկեղեցի ամայի, որ ռամիկ կոչի հանգեղիցի, այսինքն հանգուցեալ եկեղեցի»: Ուրեմն անտարակուսելի է որ Հայերը ունեցած էին Կեսարիոյ մէջ այս անունով եկեղեցի մը որ արդէն ԺԷ. դարուն իսկ աւերուած էր։

4. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ.— 1277ին առաջին անգամ ձեռագրի մը յիշատակարանին մէջ կը յիշուի Ս. Աստուածածին եկեղեցի մը, որ բաւական կանուխ պէտք է շինուած ըլլայ, վասնզի անշուշտ այն տարին չէր շինուած։ Հետեւաբար կարելի է նոյնիսկ անոր հիմնարկութիւնը մինչև քաղաքին կառուցման օրերուն բարձրացնել։ Յետոյ 200 տարիներ կը լռեն յիշատակարանները։



1478էն, այսինքն քաղաքին Օսմ. Տիրապետութեան ենթարկուելէն յետոյ անընդհատաբար յիշատակուած է բազմաթիւ յիշատակարաններու (1) մէջ։ Այս եկեղեցին իր գոյութիւնը պահեց մինչեւ վերջը։ Ան կառուցուած էր Իչէրի Շար մէջ և Հայ բնակչութեան կեդրոնավայրէն հեռու մնացած, գտնուելով յունական և թրքական թաղամասերուն միջև և Քըչի Գարուէն յիսուն քայլ դէպի արեւմուտք, վասնզի Հայերը ժամանակի ընթացքին փոխադրուած էին պարիսպէն դուրս՝ Տըտար Տար, ներսը թողլով 40-50 տունի չափ միայն։ Ան մնացած էր այսպէս անյարմար տեղ մը, թուրք խանութպաններէ և քանի մը Հայ սավաճառներէ բաղկացեալ շուկայի մը մէջ, ուրկէ եկեղեցի երթալու համար անցնող կիները պարտաւորուած էին սև



ԿԵՍԱՐԻՈՅ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՐՏԱՔԻՆ ԳՄԲԵԹԸ

շալով մը քօղարկուիլ (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 1878) որպէսզի առարկայ չըլլան վաւաշոտ ցանկութեանց և լպիրշ ակնարկներու ու գռեհիկ բացագանչութեանց որոնք նետել կը սիրեն Թուրք սրիկաներ։ Այս դիրքն իսկ ապացոյց մըն է իր հնութեան։

---

(1) 1481, 1484, 1552, 1602, 1608, 1610, 1621, 1630, 1658, 1664, 1670, 1676, 1677, 1683, 1728, 1732, 1808 թուականով ձեռագիրներու յիշատակարանները։ Յիշուած է նաև 1652ին, չուրջառի մը վրայ, դտնուած մետաքսեայ նիւթէ ոսկեթել բանուած խաչի մը վրայ, որ 119 սանդիմէթր երկայն, 8.5 սանթիմէթր լայն, իսկ թեւը 73 սանթիմէթր էր։ Այս խաչը (ՀԱ., 1895, էջ 254) իր վրայ ունէր հետեւեալ յիշատակարանը «յիշատակ է ծուրջաւս Մահտեսի Շաւրց որդի խօճայ Գրիգորին ի դուռն սբ. Աստուածածին եկեղեցին թվին. ՌԺԱ.»:

1618ին Սիմէոն դպիր Լեհացի, կը հաստատէ թէ պարիսպին մէջ էին Հայոց երկու եկեղեցիները, Ս. Աստուածածին և Ս. Սարգիս, «գետնափոր եւ խաւարչտին տեղիս, որ մետասնով կ՚իջնան եւ ի փայտից»:

*Այս փայտաշէն և գետնափոր եկեղեցին, որ Մայր եկեղեցին էր քաղաքին, վերջերը հնութեան և չքաւորութեան կողմէ առաջին կարգին վրայ էր։ Ընդարձակ գետնի վրայ կառուցուած փառաւոր շէնք մըն էր ան, որ վերջին անգամ 1835ին կառուցուած էր ի հիմանէ Զարգարեան Կարապետ աղայի ջանքերով և ժողովրդեան նուիրատուութեամբ, ինչպէս ցոյց կու տար եկեղեցիին Աւագ դրան վրայ զետեղուած արձանագրութիւն մը, որուն պատճէնը դժբախտաբար ինծի կարելի չեղաւ ձեռք բերել։*

«Անոր շինութեան պարագաները հետաքրքրական են: Կառուցուած է այնպիսի ատեն մը երբ Էէնիչէրիները իրենց ազդեցութեան գագաթնակէտին վրայ էին: Անոնք բացարձակապէս կը մերժէին լինդունիլ որ թրքական թաղին մէջ, եւ մզկիթէ մը յիսուն քայլ անդին Հայ եկեղեցի մը կառուցուի, եւ Թուրք ականջներու տակ Հայ զանգակներ ղօղանջեն: Ու իրենց կարելին բրած են ձախողեցնելու ձեռնարկը: Եւ սակայն Զարդար օղլի կոչուած Հայ ջոջ մը, շնորհիւ կառավարական շրջանակներու մէջ իր ունեցած ազդեցութեան՝ յաջողած է ձեռք բերել անոր շինութեան հրովարտակը, փոքրիկ զիջումներու գինով, այն է կամարները որոշ չափէ մը աւելի չի բարձրացնել եւ տաճարը հաստատել փողոցէն քանի մը աստիճան վարով: Այս պատճառով տաճարը քիչ մը ցած ու մթամած մթին է եւ սակայն իր նոյակերտ կառուցուածքը, եռեակ գեղաքանդակ եւ յայնչի խորաններ, վեց հսկայ սիւներու վրայ բարձրացած իր կամարները ու կաթուղիկէն եւ յետոյ իր լայնարձակ ու սրբատաշ քարերով յատակուած բակը, իրաւամբ զայն կը դնեն ոչ միայն Կեսարիոյ՝ այլ բովանդակ Թուրքիոյ Հայ եկեղեցիներու առաջին կարգին վրայ» (*Ձեռագիր Եղիազարեանի*)։

*Եղիազարեանի այս տողերը դժբախտաբար կը կարօտին ճշգրտութեան։ 1835ի վերաշինութեան ատեն, որ կատարուած է Կարապետ աղա Զարգարեանի ջանքերով, այլեւս Եէնիչէրիները գոյութիւն չունէին, հետեւաբար անոնց կողմէ արգելքի մը յարուցումը իրական չի կրնար ըլլալ։ Ցետոյ Հայերը նոյն տեղւոյն վրայ արդէն եկեղեցի մը ունէին, հետեւաբար Թուրքերը պատճառ մը չունէին իբր նոր իրողութիւն մը արգելք ըլլալու մզկիթին մօտ Հայ եկեղեցիի մը կառուցման։*

*Կը խորհիմ թէ այս պատմութեան մէջ եկեղեցւոյ աւելի հին վերաշինութեան կամ սկզբնական շինութեան հետ կապ ունեցող դէպքեր այս վերջին շինութեան եկած խառնուած են։ Հաւանական է որ 1835ի վերաշինութեան ատեն ալ Թուրք մոլեռանդներ իր սկզբնական դիրքին և ծաւալին փոփոխութեան համար խնդիր հանած ըլլան և Կարապետ Զարգարեան իր ազդեցութեամբ կրցած ըլլայ որոշ զիջումներով գործը գլուխ հանել։*

*Ս. Աստուածածին եկեղեցին նորոգուած է 1875ին։*

*Ե. Երկաթեան կը գրէ թէ* «Մայր-եկեղեցին որ իր անունին արժանի շէնք մըն է պանծալի, եւ որուն խաչկալը քանդակի եւ ոսկեզօծակի գլուխ գործոց մըն է, նորոգուած ու նոր գմբէթով օծուած էր գրեթէ 15 տարի առաջ» (Բիւզանդիոն, 1903 *Դեկտ.* 9, *թ.* 2188)։

*Ս. Աստուածածին եկեղեցին ունէր վերջին ծայր ամուր և հաստատ կառուցուածք մը։ 1884–1885ին գմբէթին շինութեան առթիւ երբ պէտք կ՚ըլլայ կլոր ծակել կամարը, գործաւորները մէկ ամիս կ՚աշխատին, վասնզի կը տեսնուի որ իւրաքանչիւր քար ոչ թէ կիրով ու աւազով այլ հալած կապարով ամրացուած էր (Պետրոս Մարթաեանի տեղեկութիւն)։ Նոյնպէս 1895ին ջարդի ժամանակ Թուրք խուժանը ահագին 6-7 օխա կշռող մուրճերով փորձած է անոր դուռը խորտակել, սակայն ամուր շինուածը տոկացած է (Նոյն)։*

*Կեսարացիք այս եկեղեցին կը կոչէին* «Պէօյիւք ժամ» (*Վ. Թէքէեան,* Ժողովուրդի Ձայն, *թ.* 810)։

5. *Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻ. — Դարձեալ* Իչէրի շարի *մէջ կը գտնուէր* Ս. Սարգիս *անուն եկեղեցի մը, որուն յիշատակութեան կը հանդիպինք* 1552 *թուականէն սկսեալ։ Ցաջորդ դարերուն գրեթէ զոյգ Ս. Աստուածածինի կը յիշատակուի անընդմիջաբար*(1)*։ Տեսանք արդէն թէ Սիմէոն դպիր Լեհացի զայն տեսած է և կը ներկայացնէ «գետնափոր», «խաւարչտին» և «ի փայտից»։*



ԿԵՍԱՐԻՈՅ Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻԻՆ ԽՈՐԱՆԸ

*Հաւանական է մտածել թէ 1552էն առաջ իսկ գոյութիւն ունէր։ Ե. Երկաթեան,* (Բիւզանդիոն, *թ.* 1878 *և* 2188) *կը կարծէ թէ անիկա Կեսարիոյ ժամանակակից եկեղեցիներուն հնագոյնն էր, սակայն անիկա հաստատող փաստ չկայ։*

*Կողմնակի դրան վրայ ՌՃՀԲ(=1723) թուականով կը մնար, իր վերաշինութիւններէն մէկուն յիշատակարանը որուն պատճէնը չկրցայ*

(1) 1607, 1608, 1610, 1611, 1654, 1670, 1677, 1732 *և* 1739 *թուականներով ձեռագիրներու յիշատակարաններին մէջ կը յիշուի։*

ձեռք բերել դժբախտաբար։ 1834ին այս եկեղեցին, դարձեալ ի հիմանէ վերաշինուած է Սարգիս աղա Կիւմշեանի նախաձեռնութեամբ ըստ Պ. Պետրոս Մարթաեանի և 1884ին կրկին վերակառուցուած 2-3 հազար ոսկի ծախքով (Նոյն և Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 2188)։ Բաւական մեծ այս գումարը սակայն հազիւ ծառայած էր լոկ շէնքը կառուցանելու և լերկ ու անծեփ մնացած էին պատերը որոնք հին պատկերներով զոցած էին։ 1902ին կ'որոշեն ներքին մասն ալ ծեփել և ոսկեզօծել։ Ճիպրայէլ աղա Իփլիքճեան, համեստ էսնաֆ մը և Ս. Սարգիսի նախկին խոնարհ մէկ պաշտօնէին զաւակը, իբր Թաղ. Խորհուրդի անդամ նախաձեռնարկ կ'ըլլայ և կը կազմէ մասնախումբ մը 12 անձերէ բաղկացեալ, որոնք կ'ընտրեն գործադիր մարմին մը երեք հոգիէ (Ճիվէլէկեան Յովհաննէս, Ճամըզեան Պետրոս և Իփլիքճեան Ճիպրայէլ)։

Նախ կը ծախուին Ս. Սարգիս եկեղեցիին բարեզարդութեան համար հնուց ի վեր նուիրուած աւելորդ իրեղէնները որոնք 17435 ղրշ. կը բերեն։ Ցետոյ կը ձեռնարկուի հանգանակութեան, մինչ միւս կողմէն մեծ գործունէութեամբ յառաջ կը տարուի շէնքը, ամբողջ տարի մը (1902) եկեղեցւոյ գմբեթը, տանիքը, պատերը, որմերը նորոգելէ, ծեփելէ զատ, 50-60 ոսկիով ալ եկեղեցիին սեփական քանի մը տուները նորոգելէ յետոյ, 18 ոսկի ալ դրամ կ'աւելցնեն։

Ճիպրայէլ Իփլիքճեան, հակառակ անոր որ իր գործակիցները ձեռնթափ եղած էին, ինքն անվհատ կը շարունակէ և անհատապէս ամէն պատասխանատուութիւն ստանձնելով, կ'սկսի խաչկալներու ոսկեզօծութեան և ի գլուխ հանել կը յաջողի։ Ընդհանուր ծախքը այս նորոգութեան կը հասնի 59748 ղրշ.ի (ծեփ, իւղաներկ նկար 40347 ղրշ., սալարկութիւն՝ 7972 ղրշ. և ոսկեզօծում՝ 11429 ղրշ.) (տես Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 2188)։

Այս հոյակապ եկեղեցին, կրկնակ կաթուղիկէներով, աւելի բարձրաձեղուն բայց նուազ գեղաքանդակ, բարձրացած է Ս. Աստուածածին Մայր եկեղեցիէն հազիւ երկու հարիւր քայլ (կամ 25 մէթր) դէպի հիւսիս, մեծ շուկայի ճամբուն վրայ։ Նոյնքան ընդարձակ, աւելի լուսաւոր բայց նուազ փառայեղ և հաստատուն է Ս. Սարգիս։ Ունի երեք արտաքին դռներ. ասոնցմէ մէկը բացուած է շուկայի ճամբուն, միւսը Ս. Աստուածածին եկեղեցին տանող փողոցին, իսկ երրորդը Յունական թաղն առաջնորդող նեղ ու մթին փողոցի մը վրայ։

Կը պատմուի թէ խուլ մրցում մը կը տիրէր Ս. Աստուածածին եկեղեցիին վերանորոգիչ Զարդար օղլուի և ուրիշ ջոջի մը՝ Մանիկ օղլուի միջև։ Այս մրցումը պատճառ կ'ըլլայ որ Աստուածածին եկեղեցիին մօտիկը, զոր Զարդար օղլու կառուցած էր, բարձրանայ նաև Ս. Սարգիսը որ Մանիկ օղլուի ջանքերուն կոթողն էր (Եղիազարեանի ձեռագիր)։ Հոս ալ սրբագրութեան կարօտ կէտ մը կայ։ Ինչպէս Ս. Սարգիսի կողմնակի դրան յիշատակարանը ցոյց կուտար այս եկեղեցին 1723ին գոյութիւն ունէր։ Զարդար օղլու 1835ին կատարած էր Ս. Աստուածածինին վերաշինութիւնը։

Մանիկ օղլու ի հեճուկս, անոր մօտ նոր եկեղեցի մը չէր կրնար շինած ըլլալ այլ գտնուած եկեղեցին ինքն ալ իր մրցակիցին պէս վերաշինած պէտք է ըլլայ։

Անմեկնելի հանգոյց մըն է թէ ինչո՞ւ այս եկեղեցիները այսքան



իրարու մօտ շինուած են։ Արդեօք ի՞նչ պէտքէ մղուած են այսքան մօտ կառուցանելու երկու եկեղեցիներ։

Նման երեւոյթ մը, նոյնքան անմեկնելի, Հալէպի Հայոց Քառասուն Մանկունք և Ս. Աստուածածին եկեղեցիները, գրեթէ քով քովի, կը ներկայացնեն։

Արդեօք ճկրաշէ՞ն են, արդիւնք հակառակութեան և մրցումի։

6. Ս. ԲԱՐՍԵՂ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԵԿԵՂԵՑԻ.— 1621ին գրուած Յայսմաւուրքի մէջ անոր յիշատակութիւնը այնքան պայծառ և այնքան յստակ է որ ոչ մէկ տարակոյս կարելի է ունենալ Կեսարիոյ մէջ նոյն թուականին այս անունով եկեղեցիի մը գոյութեան։ Դժբախտաբար իր մասին ալ կը պակսին լրացուցիչ տեղեկութիւններ։ Քաղաքի ո՞ր կողմը, ե՞րբ կառուցուած և ե՞րբ քայքայուած կամ քանդուած ըլլալը ոչ մէկ աղբիւր կը հասցնէ մեզի։

Ինչպէս վանքերու վրայ խօսուած ատեն պիտի տեսնուի քաղաքին հարաւային կողմի ծայրի տուներուն հանդիպակաց, գրեթէ չորս կամ հինգ վայրկեան հեռաւորութեամբ գետնի մը վրայ կը տեսնուին հին շէնքի մը ընդարձակ հիմերն ու կիսափուլ կամարները, որոնք կը կարծուէին Ս. Բարսեղի նուիրուած վանքի մը բեկորներն ըլլալ։ Սակայն շատ տարակուսելի է որ 1621ի յիշուած Ս. Բարսեղի եկեղեցին ըլլայ այս ենթադրեալ վանքը։

7. Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ. Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիներէն դէպ ի հարաւ-արեւմուտք գրեթէ փարսախ մը հեռուն, արտաքին պարիսպներէն դուրսը, Տըւարը Չար (շէհր) կոչուած թաղամասին մէջ հաստատուած է Ս. Լուսաւորիչ եկեղեցին, նորագոյն սրբավայրը Հայ-Կեսարիոյ։ Իր ծնունդը հետաքրքրական է։

1826ին Ս. Սարգիս եկեղեցիին կալուածներէն տուն մը, Տըւարը Չար թաղին մէջ քառորդ ժամ հեռու Իչէրի Չարէն, Սարգիս Կիւմշեան(1) սանկ դպրոցի պէս բան մը կ'ընէ և քանի մը տարի զայն մատակարարելէ վերջ՝ ինքն ալ Ս. Սարգիսի ծխական՝ կը յանձնէ Ս. Սարգիսի թաղականներուն։ Կ'երեւայ թէ այդ տուն-դպրոցը կը վարէր Գարա-Մերճան անուն վարժապետ մը, որուն անունով դպրոցը կը կոչուի «Գարա-Մերճա Մէքթէպի» և կը շարունակուի ուրիշ «պատուելի»ներու կողմէ մինչև 1857։ Այդ միջոցին Ֆրէնկեան և Մանուկեան ընտանիքները իրենց ընտանեկան հակառակութիւնները փոխադրելով Առաջնորդարան և մասնաւորապէս Առաջնորդներու շուրջը, բուռն պայքար կը մղէին։ Ս. Աստուածածին եկեղեցին Առաջնորդին, հակառակորդներուն և Ս. Սարգիսը անոր կուսակիցներուն միջնաբերդերը դարձուցած էին։

Այս երկարատև պայքարին— որ ժողովուրդը «Մեծաւոր Ղաւղասը» կը կոչէր— ընթացքին Ս. Սարգիսի ծխականները, այսինքն Առաջնորդեանները, Կեսարիոյ ժամանակին առաջնորդ Յակոբ եպ. Աճէմեանի և Յակոբ աղա Մութաֆեանի գլխաւորութեամբ գաղափարը կը յղանան Հայ Թաղին մէջ բուն իսկ Գարա Մերճան դպրոցին գետնին վրայ, բնականաբար ուրիշ տուներ ալ աւելցնելով՝ նոր եկեղեցիի մը շինութեան և կը կատարեն Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ հիմնարկէքը (Ե.

(1) Հայր բարերար Յովհաննէս Կիւմիւշեանի։

Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 1876 և 1878)։ Շինութիւնը կը կատարուի 1859ին։

Այս կառուցման գործին մէջ կարեւոր դեր կը կատարէ Գէորգ աղա Մրնտիկեան, ամէն մարդէ սիրուած էնաֆ մը, իր ընկերներով, արդար հաշիւով մը մատակարարելով։ Այս անձը կը մեռնի 1875ին կը թաղուի եկեղեցւոյն բակը (Նոյն, Բիւզանդիոն, թ. 1879)։

Իրեն գլխաւոր աջակից և նեցուկ կ'ըլլան ամբողջ ապուխտի վաճառականները (էքլիճճի էսնաֆը), ինչպէս նաև արհեստաւորներ և աղքատ դասակարգին պատկանող անհատներ, որ մեծ եռանդով կ'աշ-



Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ (դուրսէն)

խատին և կարճ ժամանակի մէջ գայն կը յաջողին գլուխ հանել։ Ով որ նիւթապէս չէր կրնար օգնել իր աշխատութեամբ կը նպաստէր։ Նոյնիսկ փոքրիկ մանուկներ, կիներ, կ'աշխատէին քար և կիր փոխադրելով իրենց ձեռքերովը (Մարքաեան)։

«Բաղդատաբար փոքր է ան, բայց շրջապատուած հոծ Հայ բազմամարդով շատ աւելի ջերմ մթնոլորտով մը պարուրուած։ Մանաւանդ այնքան հոյակապ է իր տաճարով, իր կաթողիկէով որքան Ս. Աստուածածին եւ Ս. Սարգիս եկեղեցիները»։

Մեծ ու հիմնական նորոգութեան մը կ'ենթարկուի 1885ին և այս առթիւ կը զետեղուի հետեւեալ յիշատակարանը։

Բացեալ խոր անդունդ անիծեալ այնըր դիցապաշտութեան
Ապագայ զՀայս իսկ կլանել կամէր իւր մռայլ որկորն այն.
Նա՝ սակայն, որ վեր քան զերկնից անբաւ բարձունս բազմի
Սուրբ փառօքն յաւերժ քան ըզյաւիտեանս եւ զթութեամբ լի.
Էակ վեհ՝ յորմէ հիազարհուր իմն պսակառ երկին.
Խընայեալ յազգ մեր, արկանէ 'ի նա նայեաց սիրային՝
Անտի սրբութեան շող՝ հրաշանշոյլ փայլակեալ ցոլիւք.
Զընդնաղ տեղայ վարդս լուսեղէնս ծփեալ յանմահութեան սիւզ
Ամպաց 'ի վերայ՝ ուստի իջեալ լոյս կազմեաց ըզ Գրիգոր.
Տըխուր անդունդ սեաւ սնիւ անհետի յանբաւութեան խոր.
Ըենական սիրով, քանզի նոյն արթուն հայրն անդէն վառեաց
Ողջոյն իսկ ըզհայս զըրկեալս յերկնային այն աննառ բարեաց
Ջաջողիլ յայսմ բանի՝ մեծ նըզդունս նա յանձն էառ,
Պակեան տիեզերք ընդ տանջանս՝ զոր կըրեաց այրն արդար.
Այլ զոռ տանջողըն եւ տանջանք պարտեալ 'ի նէզ տանջելոյն.
Դամբարի հանգոյն ծագեա լոյս նովաւ՝ Հայկայ 'ի մեծ տուն.
Տէր Լուսաւորիչ ընդ Առաքեալս յայն սակրս դասի
Ամբարձեալ 'ի վեր քան զհայրապետաց կարգըն պանծալի.
Սուրբ հօրն մանկութեան՝ Մաժաք լինելով բարեբաղդ դայեակ.
Անուան նորին վեհ՝ եւ ինք նուիրէ զՏաճարս սրբայարկ.
Բաբունի Յակոբ սրբակենցաղ հօր առաջնորդութեան.
Եւ 'ի հազար ութն հարիւր եւ յիսուն ինըն թուական.
Արդ որ մըտանէք բարձրելոյն 'ի յարկ վեհավայր
Նըկրտեցէք կեալ զսիրտ եւ զգործ ձօնեալ 'ի սէր երկնավառ:
Գրեցաւ յիշատակարանս յամի Տեառն 1885

Իսկ ներքին ծեփն և ոսկեզօծումը կը կատարուի 1903ին։

Սիրուն ու գեղեցիկ այս շէնքը արդէն ծեփուած էր, բայց ժամանակն անոր վրայ ազդած էր և գմբեթի, տանիքի, դրսի թէ ներսի նորոգութեան պէտքն զգալի եղած, մանաւանդ թէ բազմածուխ եկեղեցին ըլլալով, կանանց վերնատունը նեղ էր և իր խաչկալներն ոչ եւս կրնային առանց ոսկիի փայլին մնալ, մինչ միւս եկեղեցիները առով միայն կը գլէին զինքը։ Մասնաւորապէս ասոր գրգիռը հանդիսացաւ 1902ին Ս. Սարգիսի նորոգութիւնը։ Թաղ. Խորհուրդի ատենապետը՝ Մ. Գրիգոր աղա Մէլէմէթճեան և ատենադպիրը՝ Բարսեղ աղա Քիլիմեան 25ական ոսկի փոխ կուտան եկեղեցւոյ սնտուկին և անմիջապէս շինութեան կը ձեռնարկեն։ Իրենց պաշտօնակիցները՝ Վարդան Շալճեան, Սարգիս Ճըրճըրեան, Կարապետ Զաղճեան, անոնց օրինակին կը հետեւին և իրենք ալ մէկ մէկ գումար կը տրամադրեն։

Նախ վերնատունը կ'ընդլայնեն, որ եկեղեցիին կանանց բաժինն է և կ'սկսին ծախել, ամէն մէկ տեղը թուարկելով և առաջնութեան կարգով կը գնահատեն վեցէն մէկ ոսկի։

Գնողները իրաւունք պիտի ունենային որդւոց որդի գրաւել, նստիլ այդ տեղերը։ Կեսարական գործնական և ճարպիկ այս հնարքով կը գոյանայ 180 ոսկի հասոյթ(1)։

(1) Այս առթիւ պ. Ենովք Արմէն Մանզումէի մէջ (17 Դեկտ. 1903, թ. 749) բուռն յօդուած մը գրած է «Ծախուած եկեղեցիներ» խորագրով, ուր կծու բառերով կը յարձակի այս կեսարական հնարիմացութեան վրայ, ըսելով թէ «վանառականութեան ո՞ր ճիւղին կը վերաբերի արդեօք առուտուրի այս ձեւը»։ Ե. Երկաթեան պատասխանած է (Մանզումէ, թ. 783) և բանավէճ մը տեղի ունեցած է այս առիթով։

Պաշտօնապէս ոչ հանգանակութիւն կը կատարուի ոչ ալ աւելորդ առարկաներ — զոր չունէր արդէն — ծախու կը հանուին, այլ կամաւոր նուէրներով և գանձանակներու 10 փարանոցներով, Թաղ. Խորհուրդը կը յաջողի 330 ոսկի ծախքով, շատ մը ջրաներկ նկարներով, խաչկալներու և աչքի զարնող մասերու հարուստ ոսկեզօծումով, վերնատան ընդլայնումով, սիւներու վրայ կրանիթի կեղծ ծեփով, խոյակներու ագուցումով, սեղանի յաւելուածական մասով, գմբեթի, տա-



Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ (Ներսը)
(15 Սեպտ. 1929ի Խաչվերացի երեկոյին)

նիքի և ուրիշ ամէն նորոգութիւնով, առանց պարտքի այս գործը գլուխ հանել 1903ին (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, 1903 Դեկ. 9, թ. 2188)։

Ս. Լուսաւորիչ, որ ցարդ կը մնայ Հայոց ձեռքը, կը նկատուէր ժողովրդական տարրին աղօթավայրը, մինչ Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիները կը նկատուէին քաղաքին ազնուապետական դասակարգին աղօթատեղիները։

Ս. Լուսաւորիչ եկեղեցին կերպով մը ծնունդն է Ս. Սարգիսի և կը գտնուէր մինչեւ 1878 անոր խնամակալութեան տակ, և կը կառավարուէր անոր Թաղականներէն։ Ս. Սարգիսցիներ՝ եկեղեցւոյ շինութեան նպաստած ըլլալով՝ իրաւունք ունեցած են իրենց կողմէ կարգել փոխ-թաղականներ, եկեղեցին մատակարարելու և դպրոցի պէս բան մըն ալ պահելու համար։

1878ին Ս. Լուսաւորիչ եկեղեցին իր դպրոցով, իր մօրմէն՝ Ս. Սար-



գիսի ծոցէն կը բաժնուի և զատ թաղ մը կը ձեւացնէ ըստ Սահմանադրութեան։

Ընդհ. պատերազմէն յետոյ միակ անվթար մնացած եկեղեցին էր Ս. Լուսաւորիչ, որուն վրայ մանր մունր նորոգութիւնները և հարկեղած մաքրութիւնը կատարելէ ետքը, 1919ի Վարդավառի շաբաթ իրիկունը 100 ոսկիի նուէրով բարեսէր Հայ մը առաջին անգամ եկեղեցիին զանգակը կը հնչեցնէր, ժողովուրդին յուզման մէջ։

Առաջն. փոխանորդ Տ. Սերովբէ քհն. Պուրմայեան, զգեստաւորուած «ուրախ լեր Ս. Եկեղեցի» շարականով մուտք կը գործէ դէպի տաճար շրջապատուած դպիրներով, և կիրակնամտի ժամերգութիւն կը կատարէ։ Յետոյ խոստովանող ժողովուրդը կը խուժէ դասերը, յաջորդ առտուն հաղորդութիւն առնելու համար։ «Աննկարագրելի էր, կ'ըսէ ականատես մը, ժողովուրդին յուզումը եւ լացը, եւ ոմանց ակամայ հաւատուրացութեան զղջումի հառաչանքները: Վարդավառի առտուն հազարաւոր ժողովուրդ խռնուած էր. ժամերգութիւն եւ Ս. Պատարագ աննախընթաց խանդավառութեամբ տեղի կ'ունենային: Տարիներէ ի վեր եկեղեցիի եւ քահանայի կարօտը քաշող այդ բազմութիւնը կատարեալ ջերմեռանդութեամբ կը մասնակցի պատարագին, երգով եւ օրհնութեամբ: Ս. Հաղորդութիւն առնողներուն թիւը անհամար էր, ինչպէս նաեւ բազմաթիւ երախաներու մկրտութիւնը, մասաղներու ալ օրհնութիւնները, մոմի ու խունկի եւ դրամական նուիրաբերութիւնները: Նոյն օրը աւելի քան ազգային կրօնական մեծ օր մը կ'ըլլար Կեսարիոյ եւ շրջակայից Հայ ուխտաւոր բազմութեան համար»:

**ՎԻՃԱԿԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ.** Տրամաբանական կարգը կը պահանջէր հոս տալ ծանօթութիւններ Կեսարիոյ բեմին ենթակայ վիճակներու եկեղեցիներուն վրայ, սակայն աւելորդ կը համարեմ, անոր համար որ իւրաքանչիւր հայաբնակ վայրի աղօթարանի վրայ տեղեկութիւններ տուած եմ, դժբախտաբար կիսատ եւ անկատար: Ասոնցմէ ոմանք, ունէին այնքան պատկառելի հնութիւն, որքան այդ գիւղերը, եւ հիմնուած էին յաճախ Հայերու հոն տեղերը բնակութիւն հաստատելու ժամանակին իսկ կամ քիչ յետոյ:

Ընդունելով սա հիմնակէտը թէ գիւղ մը եկեղեցի ունենալէ յետոյ է որ կրնար վիճակին բեմը նկատուիլ, յաջորդ բեմագրական ծանօթութիւններս եւս եկեղեցիներու սկզբնական հաստատութեան ժամանակները մատնանշելու կրնան ծառայել եւ ճշդել մասամբ վիճակային եկեղեցիներու գոյառութեան ժամանակները:

ԱՆԾԱԾԿՈՅԹ ՍՐԲԱՎԱՅՐԵՐ. — Հայ եկեղեցիի աւանդութեանց համաձայն գերեզմանատուները նկատուած են անծածկոյթ սրբարաններ, և անբաժան մասը կամ շարունակութիւնը եկեղեցիներու։ Առհասարակ անոնք գիւղերու մէջ՝ եկեղեցիներու շուրջը կ'ըլլային։ Կեսարիոյ գիւղերուն մէջ ալ այս երեւոյթը տեսնուած է։ Սակայն քաղաքներու մէջ ժանտախտի համաճարակներու պատճառով ԺԶ. դարէն յետոյ խստիւ արգիլուած էր եկեղեցիներու շուրջը մեռեալներ թաղել։ Ասով հանդերձ եկեղեցւոյ պաշտօնեաները և ազգին ու եկեղեցւոյն մեծ ծառայութիւններ մատուցանողները յաճախ անհրաման և երբեմն հրամանով թաղուած են եկեղեցիներու բակը։ Կեսարիոյ քաղաքին եկեղեցիները գտնուելով պարսպապատ քաղա-

*քին մասին մէջ բնական է որ թոյլատրուած պիտի չըլլայ անոնց հրջապատները գործածել իբր հողվէրտիք կամ էվէրէկի բարբառով իբր* «հողուհ», *սակայն բազմաթիւ կարեւոր անձնաւորութիւններ և եկեղեցականներ թաղուած են Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիներու բակը։ Վահան Թէքէեան կ'ըսէ թէ Ս. Աստուածածին եկեղեցիի* «բակը թաղուած են մենէ մէկ քանիներ, պապս, իր հայրը եւ իր անդրանիկ որդին: Մահարձաններուն վրայ՝ իրենց անունները կը կարդացուին դեռ» (Ժողովուրդի Ձայն, *թ.* 810)։

*Ինչ որ կը հաստատէ թէ մեծատուններ հոն թաղուած էին։*

*Իսկ հասարակաց գերեզմանատունը կը գտնուէր քաղաքին հարաւային եզերքը (տես վերը, էջ 717)։ Անպարիսպ, անհրապոյր բացաստան մըն է ան, տարածուած բլուրի մը վրայ և մասամբ դաշտին մէջ։ Դաշտին մասը —որ զուտ հայկական էր և կ'ըսուէր* ղարիպլէր— *արեւմտեան կողմէն եզերուած էր ուռիներու շարքով մը։*

*Կեսարացի գրող մը կ'ըսէ թէ* «Եթէ այն ուռիները չըլլային գերեզմանոցին եզերքն ի վեր՝ ո՞վ պիտի լար մեռելներուն քով, որոնց պառկած տեղը ամէնէն տխուրն է եւ ամէնէն լքուածն բոլոր աշխարհի գերեզմաններէն: Կեսարիոյ մեռելները կրկին դժբախտ են նախ մեռած ըլլալնուն համար՝ վերջը, ասանկ տեղ մը թաղուելնուն համար: Այդ ուռիներն որ գիշերուան խաւարին ու ձմեռուան ցուրտին մխիթարանքներն են մեռելներուն, ցերեկին ու գարունին ապաւէնը չե՞ն քիչ մը ազատ օդ ընչել ուզողին եւ հովանի փնտռողին»:

*Այս ուռիները կ'ոռոգուին աղբիւրէ մը զոր կանգնած է, կ'ըսեն, Մանիկ օղլուն։ Գերեզմանատան բլրային մասը կածանով մը երկուքի բաժնուած է, արեւմտեան ու ընդարձակ մասը Հայոց իսկ արեւելեան մասը Յունաց կը պատկանի։ Հայկական մասին մօտ հաստատուած է ջրամբար մը որ կ'ըսուի* Զարդար Օղլու Գույուսու:

*Կ'երեւի թէ այս երկու երանելի անձերը —Զարդար օղլու և Մանիկ օղլու, ձգտած են իրենց հակառակութիւնը գերեզմանէն անդին ալ տանիլ, ինչպէս կը խորհրդածէր գրող մը։*

*Ուրիշ պատմութեան մը համաձայն այս ուռիները ոռոգող մշտահոս աղբիւրները երկուքն են և կառուցուած՝ Կիւմիւշեաններու բարերարութեամբ* Տրշա Շարի *մէջ և անոնց ճակատը զարդարուած է իրենց և իրենց հօր անուններով։ Անոնցմէ մէկը կը գտնուէր Պէզիրխանէ էօնիւ կոչուած թաղին մէջ և միւսը Հայոց գերեզմանատան մօտ։ Կիւմիւշեան իր կտակին տրամադրութեամբ կը հոսեցնէ այդ կրկին աղբիւրները իր ծախքով, կ'ոռոգէ ուռիները, Կեսարիոյ միակ հովանին ամառուան տաք արեւին տակ, իր վճարած ամսականով պահապան կը դնէ, իր վագֆին Պոլսոյ ներկայացուցիչներուն Կեսարիոյ փոխանորդ Հաճի Թադէոս Մնտիկեանի միջոցաւ։*

*Ասոնցմէ զատ, Կիւմիւշեան ունէր դաշտին մէջ իր անունով —*Կիւմիւշ Օղլու Գույուսը*—անունով ջրհոր մը մեծ ծախքով շինուած, Հաճըլար եօլու կոչուած այգիներու ճամբուն վրայ։ Իր կտակին հասոյթէ մաս մը յատկացուցած է վերոգրեալ երկու աղբիւրներուն նորոգութեան և Կիւմիւշ Օղլու Գույուսուն ամէն տարի ձիւն լեցնելու ծախքերուն համար (Պետրոս Մարթաեանի տեղեկութիւն)։*

*Հայոց դարաւոր գերեզմանատունը որ գոնէ ԺԵ. դարէն սկըսեալ, եթէ ոչ աւելի հին, գոյութիւն ունէր — ինչպէս կը հաստատէ Սիմէոն Լեհացի ըսելով թէ Ս. Բարսեղի եկեղեցիին մօտ կը թա-*



*ղեն Հայք իրենց մեռելները* (ՀԱ. 1935, *էջ* 91)—, *Կեսարիոյ Հայոց կեանքին գլխաւոր վաւերագիրները կը պարունակէր անշուշտ իր տապանագիրներով, որոնցմէ աւա՜ղ այսօր օգտուելու վիճակին մէջ չեմ, վասնզի մոնկոլեան վայրագութեան զոհ գացած են բոլոր արձանագրութիւնները։ Անեղութիւնն ու զայրոյթը բարբարոսին ողջերը մահացնելէ յետոյ անոնց գոյութեան հետքերն ալ ջնջելու անասանելի գազանութիւնն իրեն ներելի համարած է։ Այս զազրելի ու հրէշային ոճիրը՝ կ'արձանագրեմ, սրտի անհուն կսկիծով մը ողբալով անդարմանելի կորուստը այս թանկագին յիշատակարաններուն, որոնք թերեւս մեծագոյն առաջնորդ մը պիտի ըլլային Հայ Կեսարիան վերապրեցնելու իր անցեալին բովանդակ ծալքերով և դէմքերով։*

*Այսօր մէկ հատ իսկ չէ փրկուած անոնցմէ և ամէնքն ալ կտոր կտոր եղած են, ինչպէս կը հաւաստեն, անմեռ ու յաւիտենական պատմութիւնն ալ ջնջելու ցանկութեամբ, որ սակայն պիտի մնայ անիրագործելի ցնորք անշուշտ։*

## Զ. ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՅՈՑ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆԸ

1. *ԻՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ. — Կեսարիա հակառակ անոր որ հայաբնակ քաղաք մը եղած է նոյնիսկ Քրիստոնէական թուականին սկիզբներէն սակայն չէ ունեցած առանձին Հայ հոգեւոր կազմակերպութիւն, վասնզի Յոյները չէին կրնար հանդուրժել Կապադովկիոյ եկեղեցւոյն կեդրոնին և օրթոտոքսութեան ամրոցներէն մէկը հանդիսացող այս քաղաքին մէջ ոչ-օրթոտոքս համայնքի մը կազմութեան, թէև Ժ. դարուն Սեբաստիոյ և Լարիսայի մէջ Հայ եպիսկոպոսներ յիշուած են* (*վերը էջ* 386 ) *և ինչպէս բացատրած եմ* (*վերը էջ* 535-542), *հաւանական է որ նոյն դարուն Մելիտինէ, Խարբերդ, Անտիոք, Տարսոն, Սուլընտա և այլ ալ ունեցած են Հայ եպիսկոպոսներ։ Կեսարիոյ Հայ եպիսկոպոս մը յիշուած չէ, թէև անհաւանական չէր որ Խաչիկ Ա. Արշարունի* (971-992) *կաթ. Կեսարիոյ համար ալ եպիսկոպոս մը ձեռնադրած ըլլայ* (*տես էջ* 536)։ *Ենթադրելով իսկ թէ Կեսարիա Հայ եպիսկոպոս ունեցած ըլլայ Ժ. դարուն,* Սեբաստիայի, Մելիտինէի *և* Լարիսայի *եպիսկոպոսները, այնքան մօտ իրեն, անշուշտ զբաղած են այդ տեղի Հայերով։ Յատկապէս Լարիսա* (*վերը էջ* 419-421) *այնքան մօտ էր Կեսարիոյ որ այս ենթադրութիւնը կրնայ ներելի համարուիլ։*

*ԺԱ. դարուն երբ կազմուեցան Կապադովկիոյ մէջ նորտ Հայ թագաւորութիւններ, անոնց հողերուն մէջ ապաստան գտաւ նաև Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը, որ նախ* Սեբաստիա (1023-1026 *և* 1051-1058) *ապա Տարէնդէի մօտ* Թաւբլուր (1062-1065), Ծամնդաւ (1065) *և* Մուտառասուն (1066) *հաստատուեցաւ։*

*Ասոնցմէ* Ծամնդաւ (*վերը էջ* 423-428) *և* Մուտառասուն (*Կէմէրէկի մօտ*) *այնքան մօտ էին Կեսարիոյ, որ կրնանք մտածել թէ ան մաս կը կազմէր անոնց սեփական վիճակին և յատուկ եպիսկոպոս չունէր։*

*Բարսեղ Անեցի Կաթողիկոս որ* 1081*էն ի վեր Անիի մէջ իբր կաթողիկոս կը գործէր, երբ կրցաւ վերջ տալ Հոնիի, Մարաշի և Տարսոնի մէջ նստող կաթողիկոսներու իշխանութեան և մինչեւ վեց աթոռի բաժնուած կաթողիկոսութիւնը դարձեալ միացնել, այցելեց* 1091*ին ի մէջ այլոց, Կեսարիա, որուն մերձակայ աթոռները ջնջուած էին։*

Շատ հաւանական է ենթադրել թէ Բարսեղ Կաթ. Հոնի, Մարաշ, Ուռհա, Անտիոք եւ Կեսարիա մէկ մէկ եպիսկոպոս նշանակած ըլլայ։ Դժբախտաբար միայն ենթադրութիւն կը մնայ այս տեսութիւնը, վասնզի զայն հաստատող ոեւէ փաստ կը պակսի։

Քիչ յետոյ Բարսեղ կը հաստատուի Կիլիկիոյ Հայ իշխանութիւններէն զօրաւորագոյնին՝ Գող Վասիլի երկրին մէջ ի Քեսուն, ուրկէ իր յաջորդին Գրիգոր Գ. Պահլաւունիի (1113–1166) օրով Ամենայն Հայոց աթոռը կը փոխադրուի Եփրատի եզերքը Հռոմկլայ ամրոցը, ուր 1179ին, այսինքն Բարսեղ կաթողիկոսի Կեսարիա այցելութենէն մօտաւորապէս հարիւր տարի յետոյ, գումարուած եպիսկոպոսներու շարքին մէջ կը յիշատակուի «Յովհաննէս Եպիսկոպոս Կեսարու Կապադովկիացւոց» որ չենք կրնար Կեսարիոյ առաջին եպիսկոպոսը համարել որչափ որ ալ առաջին յիշատակուածը ըլլայ։

Իր անծանօթ նախորդները՝ հաւանօրէն ԺԱ. դարուն վերջերէն՝ Բարսեղ Անեցիի օրերէն պէտք է գոյութիւն ունեցած ըլլային։ Հետեւաբար բաւական վստահութեամբ կրնանք ըսել թէ Կեսարիոյ Հայոց առաջնորդութիւնը հաստատուած է ԺԱ. դարուն վերջերը։

2. ԻՐ ԴԻՐՔԸ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՆՈՒԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ.— Կեսարիոյ առաջնորդութիւնը միշտ նկատուած է «Արքեպիսկոպոսական աթոռ»: Պատճառը շատ պարզ է։ Կեսարիա քրիստոնէական առաջին դարերուն, երբ ընդհանրական եկեղեցիին գլխաւոր աթոռներէն մէկը շատ մեծ անուն ունէր։ Հայ Եկեղեցին շատ բան կը պարտէր այդ աթոռին, որուն աշակերտներէն էր իր Լուսաւորիչը եւ հոն ձեռնադրուած էին իր առաջին հայրապետները՝ մինչեւ Մեծն Ներսէս (353–373)։

Պատմական աւանդութիւն մը կար որ կարելի չէր անտեսել։ Ուստի Կեսարիոյ աթոռը նկատուեցաւ միշտ Արքեպիսկոպոսութիւն։ Ան ունեցած է ուրիշ եպիսկոպոսութիւններ կամ քորեպիսկոպոսութիւններ ալ իր իշխանութեան տակ։ Դժբախտաբար վաւերագիրներ կը պակսին մեզի ցոյց տալու համար թէ ԺԲ. դարէն մինչեւ ԺԷ. դար ինչ էր տարածութիւնը եւ վիճակային կազմակերպութիւնը Կեսարիոյ Հայ արքեպիսկոպոսութեան։ Սակայն պիտի ջանամ հատուկտոր տեղեկութիւններով լուսաբանել Կեսարիոյ առաջնորդութեան թեմագրութիւնը։

3. ԻՐ ԹԵՄԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Ընդունելով թէ Կեսարիոյ Հայ առաջնորդութիւնը կ'սկսէր ԺԱ. դարուն, իր թեմական կազմակերպութիւնն ալ այդ թուականէն պէտք է սկսած ըլլայ սակայն դժբախտաբար առաջին մէկ երկու դարերու մասին ծանօթութիւններ չունինք։

Առաջին վաւերագիրը ձեռագիրի մը յիշատակարանն է 1206 թուականով որ գրուած է «Ի ՏՈՒՄԱՐԾԱ» եւ աւարտած «ի գաւառս Կեսարիոյ Կապադովկեցւոց ի հռչակաւոր անապատս **Սրբոյն Կարապետի Յովհաննու եւ Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային** եւ Սրբոյն Թէոդորոսի եւ Սրբոյն Մեռկերիոսի եւ այլ բազմաւոր սրբութեանցս, ի յեպիսկոպոսութեան Տէր Ազարիա վերայտեսչի»:

Ասկէ կը հասկցուէր թէ ԺԳ. դարուն սկիզբը Կեսարիոյ վիճակին կեդրոնն էր՝ Ս. Կարապետի վանքը, եւ իրեն կապուած ունէր թերեւս ի մէջ այլոց Թոմարզան, որ Կեսարիայէն եօթը ժամ հեռու էր, դէպ ի արեւելեան հարաւ, Տաւրոս լեռներուն կողմը եւ ունէր հին վանք մը,



Ս. Աստուածածին, հաւանօրէն ԺԳ. դարէն սկսեալ։

Վիճակի մը կեդրոնը վանք մը ըլլալը՝ ԺԱ. եւ ԺԲ. դարերուն սովորութիւն դառնալ սկսած էր, ինչպէս կը դիտէ Օրմանեան (Ազգապատում, էջ 1548)։ Ան կ'ըսէ թէ 1199 Յունուար 6ին Լեւոնի թագադրութեան մասնակցող եպիսկոպոսներէն գլխաւորներուն վիճակին հետ՝ վանքի մըն ալ անունը կը յիշուի, որուն առաջնորդ կամ տէր կը ներկայացուին վիճակաւորները (Սմբատ Գունդստապլ, էջ 110) եւ այս կը նկատէ սկզբնաւորութիւն մը թեմակալներու վանքերու մէջ բնակելուն եւ առաջնորդ անունը կրելուն, որ մեր օրերը սովորական դարձած է եւ թեմակալութիւնը յայտնող եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս անունին տեղ կը գործածուի (Ազգապատում, նոյն)։ Կեսարիա նաեւ այս ընդհանրանալ սկսած կանոնին ենթարկուած ըլլալ կը թուի այսպէս «հռչակաւոր անապատ» մը կեդրոն ունենալով։

Դժբախտաբար երկար ատեն յիշատակարաններ կը դադրին եւ չունինք առձեռն ուրիշ ոեւէ վաւերագիր մը որ ցոյց տայ թէ ԺԲ. դարուն կամ անոր երկու յաջորդ դարերուն Կեսարիոյ արքեպիսկոպոսութեան ո՞ր վիճակները կապուած էին։

ԺԵ. դարուն սկիզբները, 1417ին Կեսարիոյ արքեպիսկոպոսութեան կեդրոնը Ս. Կարապետի վանքին մէջ ըլլալը աւելի բացորոշ կերպով կը հաստատուի վասնզի «Յեւկառու եւ Կեսարիոյ» եպիսկոպոս տիտղոսով կը յիշատակուի Թորոս եպիսկոպոսը (Երուսաղէմի Ս. Յարութեան արձանագրութիւն)։ Այս կերպով հարկ կ'ըլլայ ընդունիլ թէ որոշապէս Առաջնորդութեան կեդրոնն էր Էֆքէրէի Ս. Կարապետի վանքը եւ իրեն ենթակայ էին Էֆքէրէ, Կեսարիա եւ հաւանօրէն նաեւ Թոմարզա որ 1206ին արդէն իր վիճակն էր։

1481ին ասոնց վրայ պէտք է աւելցնել նաեւ Նիրզէ ուր կը յիշատակուի Ս. Գրիգոր Նիւսացւոյ Հայ վանքը, որուն Կեսարիոյ եպիսկոպոսին ենթակայ ըլլալը ըսուած է։ Նոյն թուականներուն կը յիշատակուի նաեւ Մանճիսոն գիւղը (Մասոն=Մանճըսըն) որ ինչպէս կ'երեւայ ունէր երեք եկեղեցի Ս. Աստուածածին, Ս. Խաչ եւ Ս. Թորոս (տես վերը, էջ 788)։

Հետեւաբար ԺԵ. դարուն վերջերը Կեսարիոյ Արքեպիսկոպոսական աթոռին կեդրոնն էր Ս. Կարապետի վանքը, իբր վիճակ ունենալով,

1. ԿԵՍԱՐԻԱ քաղաքը
2. ԷՖՔԷՐԷ գիւղը
3. ԹՈՄԱՐԶԱ »
4. ՄԱՆՃԸՍԸՆ »
5. ՆԻՐԶԷ »

ԺԶ. դարուն Կեսարիոյ Արքեպիսկոպոսութեան ենթակայ եպիսկոպոսութիւն մը երեւան կու գայ, վասնզի կը տեսնենք որ 1552էն սկսեալ Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին մէջ ալ կը նստի առանձին եպիսկոպոս մը։

Հետեւաբար երկու վանքերու մէջ կ'ստեղծուին երկու աթոռներ,

1. Արքեպիսկոպոսական մը՝ կեդրոն ունենալով Էֆքէրէ Ս. Կարապետի վանքը
2. Եպիսկոպոսական մը՝ կեդրոն ունենալով Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը:

Արդարեւ նկատելի է որ ԺԶ. դարուն կէսերէն (1550ական թուական-

ներէն) սկսեալ մինչև 1680ական թուականները գրեթէ զոյգ կը յիշուին անընդհատ Կեսարիոյ և Թոմարզայի գաւառին առաջնորդները։

Այս տեսութեան ուժ կու տայ Ոսկան եպ. Երեւանցիի (†1674) կազմած Հայ եկեղեցւոյ նուիրապետութեան վիճակագրական լատիներէն ցուցակը որ ըստ Օրմանեանի (Ազգապատում, էջ 2546) տեսութեան, իսկականին և իրականին ճիշդ պատկերը չէ սակայն բոլորովին անհիմն և մտածածին ալ չէ։ Այս ցուցակին պատրաստութեան մէջ Ոսկան եպ.ի դիտումը եղած ըլլալ կ'ենթադրուի իր եկեղեցին կարգաւորեալ ներկայացնել լատին աշխարհին առջև և իրականը կանոնականին մերձեցնելով՝ կազմել ընդհանուր պատկեր մը Հայ Եկեղեցւոյ թեմերուն։ Օրմանեան Ս. որ բնագիրէն քաղելով և անհասկնալի մասերը որքան կարելի է լուսաբանելով անոր վերլուծումը տուած է (Ազգապատում, էջ 2548) կ'ըսէ թէ Ոսկան եպ. Երեւանցի, Կեսարիան ցոյց կու տայ Էջմիածնայ կաթողիկոսութեան ենթակայ 17 Արքեպիսկոպոսութիւններէն մին, որ իրեն ենթակայ ունէր երկու եպիսկոպոսութիւններ.

1. Ս. Աստուածածին
2. Անբացատրելի

Բնագրին մէջ (տես Dictionnaire de Géographie sacrée et ecclésiastique par M. Benoist. Paris, տպ. Migne, 1854–1862, Ա. հատ. էջ 820) Կեսարիոյ արքեպիսկոպոսութեան ստորադասուած երկու վիճակները սապէս նշանակուած են.

1. Surb-Astuasasin ou Sainte Mère de Dieu, monastère à trois lieues de Césarée.
2. Hisia, monastère, à six lieues au nord de Césarèe.

Օրմանեան այս վերջինը կը նկատէ անբացատրելի, վասնզի այս անունով վայր մը չկայ Կեսարիոյ շուրջը։

Այս հետաքրքրական ցուցակին համաձայն՝ Կեսարիոյ Արքեպիսկոպոսութիւնը որուն կեդրոնն էր ըստ ամենայն հաւանականութեան Ս. Կարապետի մայրավանքը, իրեն ստորադաս ունէր երկու քորեպիսկոպոսութիւններ,

1. Ս. Աստուածածին՝ Կեսարիայէն 3 փարսախ հեռու վանք մը,
2. Հիզիա, Կեսարիոյ հիւսիսային կողմը 6 փարսախ հեռու վանք մը։

Ասոնց տեղը իմ տեսութեամբս կարելի է ճշդել հետեւեալ կերպով եթէ հեռաւորութեան մասին Ոսկան եպ.ի տեղեկութիւնները ճիշդ են։ Այդ պարագային Ս. Աստուածածինը չի կրնար Թոմարզայի վանքը ըլլալ, այլ պէտք է անիկա աւելի մօտ տեղ մը ըլլայ, և կը կարծեմ թէ անիկա Սիմէոն դպիր Լեհացիի յիշած Թալասի մերձակայ Ալի Տաղի վրայ գտնուած Ս. Աստուածածինը կրնայ ըլլալ կամ Ս. Դանիէլի վանքը՝ որ հին ատեն հաւանօրէն Ս. Աստուածածին կը կոչուէր։ Իսկ Հիզիան հաւանօրէն ընդօրինակութեան կամ ընթերցման սխալ մըն է և պէտք է ըլլայ Նիզիա կամ Նիրզա, Ս. Գրիգոր Նիւսացւոյ վանքը որ արդարև կը գտնուէր Կեսարիոյ հիւսիս-արեւելքը։

Իսկ եթէ հեռաւորութիւնները հաշուուած են Կեսարիոյ առաջնորդութեան կեդրոն Ս. Կարապետի վանքէն, այն ատեն պէտք է Ս. Աստուածածինը համարել Մանճըսընի հնօրեայ եկեղեցին և Հիզիան դարձեալ Նիրզան, որոնք արդէն ԺԵ. դարուն կը յիշուին վաւերագիրներով։ Ինչպէս կը տեսնուի Թոմարզան՝ ըստ Ոսկան եպ.ի, Կեսարիոյ առաջնորդութեան շրջանակէն դուրս մնացած է։



Այս մասին բաւական լուսաբանող հանգամանք ունի 1661ին գըրուած Ցայսմաւուրքի մը վերջը գրուած հետաքրքրական ցուցակ մը որուն համար ըսուած է թէ «Պրտղին պէեան կ'առնէ»:

Այս ցուցակը նոյնութեամբ մէջ կը բերեմ, ենթադրելով թէ անիկա գրուած է 1661էն յետոյ, առ առաւելն մինչև ԺԸ. դարուն կէսերը։

| | | | |
|---|---|---|---|
| 1. Նիզեայ (=Նիրզէ) | 2 | ոսկի | 130 ստակ |
| 2. Մանճուն (=Մանճըսըն) | 5 | » | |
| 3. Ֆէնէսէ | 1 | » | |
| 4. Տէվէլի (հասկցիր Էվէրէկ) | 2 1/2 | » | |
| 5. Ըսպրտան | — | » | 70 ստակ |
| 6. Եւքառա | 5 | » | |
| 7. Պալայկասի | 3 | » | |
| 8. Մանճուսուն | 3 1/2 | » | |
| 9. Վանքկէօլ (Տէրէվանք) | 2 | » | |
| 10. Էրքիլէտ | 2 | » | |
| 11. Կասի | 1 | » | |
| 12. Տարսեախ | 1 | » | 150 ստակ |
| 1.3 Կամերուկ (= Կէրմիր) | 2 1/2 | » | |
| 14. Թաւանուսուն (=Թաւլուսուն) | 1 1/2 | » | |
| 15. Թալա (= Թալաս) | 3 | » | |

Հետեւաբար ըստ այս ցուցակին Կեսարիոյ Առաջնորդութիւնը միայն 15 թեմ ունէր։

Նշանակելի է որ այս ցուցակին մէջ կը պակսին մինչև ԺԸ. դար հայաբնակ եղած հետեւեալ վայրերը. Իսպիլէ, Աղրնաս, Պէօյիւք Պիւրիւնկիւզ, Քիւչիւք Պիւրիւնկիւզ, Ջեւոլի, Պելիսիմոն, Ղազրնա, որոնք այդ ցուցակը գիրի առնուած ատեն ապահովաբար արդէն Հայերէն պարպուած էին։ Իսկ Ջօմախլու թերեւս հաստատուած չէր կամ շատ նոր հիմնուած։ Սակայն ի՞նչպէս կարելի է մեկնել Թոմարզայի նշանակուած չըլլալը, եթէ ոչ սա իրողութեամբ թէ անիկա կը կազմէր առանձին առաջնորդութիւն մը։

ԺԸ. դարուն վերջերը, Ս. Դանիէլ վանքին մէջ եւս կը կազմուի Քորեպիսկոպոսութիւն մը չեմ գիտեր ի՞նչ պատճառով։

Այս դարուն այլեւս վաւերագիրներ երեւան կու գան որոնք կը լուսաբանեն բաւական որոշ տուեալներով Կեսարիոյ առաջնորդութեան սահմանները։

Այսպէս նոյն դարէն ունինք երկու ցուցակներ, մին 1765 Յունիս 18 թուականով, կազմուած Երեմիա դպիր Օշականցիէն (Դիւան. Գ. 799–800) և միւսը իր պետէն Սիմէոն կաթողիկոս Երեւանցիէ, գրեթէ նոյն օրերուն (Ջամբռ, էջ 45–46), երկուքն ալ Մայր-աթոռի նուիրակութեանց ցուցակը կազմելու նպատակով։

Այս ցուցակները դժբախտաբար ցոյց չեն տար թեմերը այլ կ'ընդգըրկեն Էջմիածինի նուիրակութիւնները, և ինչպէս կը տեսնուի Թոգաթ, Կեսարիա, Ակն, Սեբաստիա, Ամասիա, Մարզուան, Ճանիկ, Գասթէմունի, Եօզկատ և այլ կը կազմեն մէկ նուիրակութիւն։

Այդ թուականէն գրեթէ ճիշդ հարիւր տարի յետոյ 1864 Յունուար 1ին Կ. Պոլսոյ Պատրիարքարանը հրատարակած է «Ընդհանուր Ցուցակ Տաճկաստանի հայաբնակ գաւառաց, քաղաքաց, գիւղաքաղաքաց եւ երեւելի գիւղօրէից» (տպ. Քիւրքճեան) տետրակը, ինչպէս նաև Ազգ. Կեդրոնական

Վարչութեան 1872–1873 ամի համարատուութիւնի (տպ. Միւհէնտիսեան, 1874) կից Գաւառական վիճակագրութիւնը և 1901–1903ին Վիճակացոյց Գաւառական Ազգային Վարժարանաց Թուրքիոյ, տետրակները, որոնք կը պատկերացնեն 1765էն 1900, Կեսարիոյ Առաջնորդական վիճակին թեմագրութիւնը։

Արդ, Երեմիա դպիր Օշականցիի ցուցակը որ կազմուած ըլլալ կը թուի միայն քաղաքները կամ մեծ կեդրոնները նկատի ունենալով, կը տեսնենք թէ չի յիշատակեր Տրդատ եպ.ի հրատարակած պատկերներու քանակը նշանակող վերոյիշեալ ցուցակին մէջ գտնուած Տէրէվանք, Թավլուսուն, Պալակէսի, Եւքարա, Կասի, Մանճրսըն, Նիրզէ, Տարսեախ, Ըսպտոն գիւղերը, որոնց 1765ին հայաբնակ ըլլալը ոչ մէկ տարակոյսի տակ է։ Սակայն կը յիշատակէ անկէ աւելի հետեւեալ քաղաքները։

16. Թոմարզա
17. Նիկտէ
18. Պոռ
19. Կէմէրէկ

Իսկ իր պետը Սիմէոն կաթ. Երեւանցի իր ցուցակին մէջ (Ջամբռ, 45-46) աւելի խղճամիտ, մանրամասնած է և հետեւաբար յիշած է ոչ միայն բոլոր վերը յիշատակուած 19 վայրերը (բացի Կէմէրէկէն) այլ աւելի ունի նաև ուրիշ քաղաք մը՝

20. Ազսարայ

1864ին Ազգ. Պատրիարքարանի կազմած ցուցակին մէջ, մի քանի գիւղեր իրենց Հայ բնակչութենէն այդ հարիւրամեակին պարպուած կամ շատ պզտիկ վայրեր ըլլալնուն համար դուրս ձգուած են(1), իսկ միւս վայրերը կը յիշատակուին նոյնութեամբ, միայն երկու քաղաք, ցարդ յիշուածներէն աւելի ըլլալով։ Ասոնք էին՝

21. Գըրշէհիր (Էնկիւրիւի կուսակալութեան մէջ)
22. Նէվշեհիր (Գոնիայի » » )

1872–1873ին դարձեալ Կ. Պոլսոյ Պատրիարքարանի կազմած նոր ցուցակին մէջ 1865ի ցուցակէն դուրս ձգուած մի քանի գիւղերը(2) վերահաստատուած են և բոլորովին նոր ըլլալով հետեւեալները աւելցուած.

23. Քիչի գիւղ՝ որ իրապէս Թալասի մէկ թաղն էր
24. Զոմախլու
25. Ինճէ-Սու
26. Ճիւնիւն
27. Գարաճա Էօրէն
28. Սարմուսագլը

Ի. դարուն սկիզբը կազմուած նոր ցուցակի մը մէջ կը գտնենք աւելցուած հետեւեալ գրեթէ նոր հայաբնակ վայրերը.

29. Չիճճի Տէրէ
30. Եէնիճէ
31. Սէփիւսլիւ
32. Թաշխան

---

(1) Ասոնք էին Էրքիլէթ, Տէրէվանք, Կասի, Նիրզէ, Տարսեախ, Ըսպտոն:
(2) Ինչպէս Էրքիլէթ, Տէրէվանք, Տարսեախ:



33. Յաչագ
34. Իլիպէ
35. Եաղտը Պրուն
36. Իւրքիւպ

Արդէն բացատրուեցաւ (տես վերը, էջ 874-5) թէ 1904ին վարչական կարգադրութեամբ այս թեմերէն մաս մը անջատուեցաւ և տրրուեցաւ դրացի թեմերու և Կեսարիոյ առաջնորդութիւնը ամփոփուեցաւ անկախ միւթէսարըֆութեան սահմաններուն մէջ։

4. ԻՐ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԱԹՈՌՆԵՐՈՒՆ ՀԵՏ.— Կեսարիոյ առաջնորդութիւնը՝ հիմնուած ԺԱ. դարուն, կապուած էր Ամենայն Հայոց Հայրապետութեան, որմէ անջատուելու ձախող փորձ մը ըրաւ 12(?)3ին երբ Յովհաննէս Մեծաբարոյի (1203–1221) ընտրութեան ատեն պառակտում յառաջ եկաւ և Սելջուկ Ռումի կայսրութիւնը չահագործեց այս դէպքը իր հողերուն մէջ ապրող Հայոց համար մասնաւոր կաթողիկոսութիւն մը հաստատելու համար։ Այսպէս Կեսարացիք՝ Սեբաստացիներու հետ գործակցեցան կաթողիկոսացնելու համար Սեբաստիոյ առաջնորդ՝ Անանիան (1203–1207†) (տես վերը, էջ 539-540) և անոր հնազանդեցան։

Անանիա նոյնիսկ անձամբ 1204ին Կեսարիա գնաց։ Սակայն այս կաթողիկոսը իր յաջորդը չունենալով պառակտումը վերցաւ և Կեսարացիք՝ դարձեալ հնազանդեցան Հռոմկլայ և Սիս նստող կաթողիկոսներուն, մինչև 1441, երբ Ամենայն Հայոց կաթողիկոսութեան աթոռը կրկին իր նախկին բնակավայրը Ս. Էջմիածին հաստատուեցաւ։

Այս փոխադրութիւնը որ Արեւելեանք կը կատարէին փրկելու համար Հայ Եկեղեցին օտար ազդեցութիւններէ, պատճառ եղաւ պառակտումի մը, վասնզի Սիսի մէջ շարունակեցին նստիլ կաթողիկոսներ, որոնց հնազանդիլ նախամեծար համարեցին Արեւմտեան կարգ մը գաւառներ, որոնց մէջ էր նաև Կեսարիա, որ մինչև ԺԶ. դարուն վերջերը և ԺԷ. դարուն սկիզբները կապուած մնաց այդ աթոռին, ինչպէս կը հաստատեն 1481էն մինչև 1601 Կեսարիոյ մէջ գրուած բոլոր ձեռագիրները, որոնք անխտիր Կիլիկիոյ կաթողիկոսները կը յիշատակեն իբր հայրապետ միակ բացառութեամբ մը (1553ին գրուած Աւետարան) ուր կը յիշատակուի Էջմիածնայ կաթողիկոսը։

Այս միակ յիշատակարանը որ գրուած է ժամանակամիջոցի մը ուր Էջմիածնայ կաթողիկոսները ազդեցիկ դեր մը կատարել կ'սկսին Արեւմուտքի մէջ, և Օսմ. պետութեան կեդրոնին Կ. Պոլսոյ մէջ կը պայքարին Կիլիկեան ազդեցութեան դէմ (տես Արշակ Ալպօյաճեան, Ազգ. Սահմանադրութիւնը, իր ծագումը եւ կիրառութիւնը, 1910, Ընդ. Օրացոյց, էջ 104-107) նշակելի է, վասնզի սոյն ցոյց կու տայ թէ Կեսարիոյ մէջ ալ մարդիկ կային որ կ'ուզէին յարիլ դէպի Էջմիածին, որուն յաղթանակը անխուսափելի էր, եթէ ճէլալիներու չփոթութիւնները և Արարատեան գաւառին մէջ պատահած աղէտները՝ Թուրք և Պարսիկ պատերազմներուն հետեւանօք, չտկարացնէին Մայր-աթոռը, որուն գահակալներն ալ այս խառնակութեանց ընթացքին գծրախտաբար մեծ մասամբ ապիկար ու անբարոյ արարածներ, կը մղէին գաղութները երես դարձնելու իրենցմէ, հակառակ անոր որ դէպի Էջմիածին հակում մը կը նշմարուէր ամէն կողմ, ինչպէս նաև Կեսարիա, ուր ԺԷ. դարուն սկիզբը, վերջապէս կը յաղթանակէ այս գաղափարը

շնորհիւ Կեսարացի Գրիգոր վրդ.ի՝ Կեսարիոյ ամէնէն նշանաւոր առաջնորդներէն մէկուն, որ աշակերտը և հիացողը ըլլալով Սրապիոն Ուռհայեցիի, երբ ան Ջուղայեցւոց պահանջով Ամենայն Հայոց կաթողիկոս եղաւ Գրիգոր ԺԴ. անունով (1603) և 26 տարիներ յետոյ իր աշակերտը՝ Մովսէս Տաթեւացի (1629–1633†) նոյն աթոռը բարձրացաւ, Կեսարիան Էջմիածնայ հնազանդեցուց, հակառակ անոր որ 1602ին ինքն Սիսի մէջ եպիսկոպոս ձեռնադրուած էր Կ. Պոլսոյ վրայ և չափազանց կ'ատէր Էջմիածնայ Մելքիսեդեկ կաթողիկոսը՝ և անոր ձեռնասուն Յովհաննէս Խուլ և Զաքարիա Վանեցի Կ. Պոլսոյ պատրիարքները՝ իր ոխերիմ հակառակորդները՝ որոնց դէմ մաքառելու համար իր ձեռնադրողը՝ Յովհաննէս Դ. Այնթապցի Կիլիկիոյ կաթողիկոսը մեծ աջակից մը եղած էր։ Սակայն երբ ան վախճանեցաւ (1621) և իր աշակերտը՝ Մովսէս կաթողիկոս եղաւ առանց այլ և այլի յարեցաւ անոր։ Անշուշտ մէկ օրէն միւսը կարելի չէր բոլոր աւանդութիւնները ջնջել։ Այնպէս որ երբեմն դեռ անցողակի մի քանի ձեռագիրներու մէջ կը յիշուին Կիլիկիոյ կաթողիկոսները, ինչ որ կը հաստատէ թէ Գրիգոր Կեսարացիէն յետոյ դարձեալ պահ մը Կեսարիա Սիսի կաթողիկոսներուն հնազանդած է։

Արդարև իր յաջորդները Թորոս վրդ. Ասեցի (յետոյ Կիլիկիոյ կաթողիկոս) և Դաւիթ եպ. (Կիլիկիա ձեռնադրուած) կրկին 1637–1658 թուականներուն Կեսարիան Կիլիկիոյ վիճակ դարձուցած են։ Իսկ 1661էն յետոյ Կեսարիոյ մէջ գրուած բոլոր ձեռագիրները անխտրաբար կը յիշատակեն Էջմիածնայ կաթողիկոսը, երբ արդէն Ամենայն Հայոց Հայրապետական աթոռին վրայ կը գահակալէր Յակոբ Կաթողիկոս Ջուղայեցիի (1655–1680) պէս ազգին բարւոյ և ապագային համար աշխատող և Կաթողիկոսութեան հեղինակութիւնը և հմայքը բարձրացնող եկեղեցական մը որ հակառակ իր տարիքին անձանձրոյթ մէկ տեղէն միւսը կը փութար, և Ամենայն Կաթողիկոսութեան իշխանութիւնը և ազդեցութիւնը ամրապնդել կ'աշխատէր։

1664ին միայն ճաշոցի մը յիշատակարանին մէջ իբր վերջամնաց արտայայտութիւն մը Կիլիկիոյ աթոռին նկատմամբ պահուած յարգանքի մը, կը հանդիպինք սա տեսակ յիշատակութեան մը, «Ի հայրապետութեան սբ. Էջմիածնի յուսադէմ աթոռոյն Տն. Յակոբ Երջանիկ դիտապետի եւ Տանս Կիլիկիոյ Դաւիթ Կաթողիկոսի» (Հակոբոս Հալէպ (1663–76)։

Հետեւաբար Կեսարիոյ առաջնորդութիւնը 1661էն սկսեալ կրնանք վերջապէս և վճռապէս Էջմիածնի կապուած համարել, երկար մաքառումներէ յետոյ, որոնք առաջին անգամ ծայր տուին 1553ին, և տեղատուութենէ մը յետոյ, 1629ին դարձեալ սկսան և պայքարի շրջանէ մը յետոյ որ մինչեւ ԺԷ. դարուն կէսերը տեւեց փոխնիփոխ յաջողութիւններով, Կեսարիա հուսկ ուրեմն Էջմիածնայ թեմ եղաւ և այս կերպով Կ. Պոլսոյ պատրիարքական աթոռին ալ հեղինակութիւնը ճանչցաւ և անոր կապուեցաւ, և այնպէս մնաց մինչև վերջը, միշտ սակայն պահելով հետք մը Կիլիկեան աթոռին հնազանդութեան ժամանակամիջոցէն, վասնզի Ս. Դանիէլի վանքը որ մինչև 1904 պահած էր իր անջատ վիճակի մը դիրքը և իրեն ենթակայ Պէլէկէսի, Կէրմիր և Մունճուսուն գիւղերը, մինչև վերջը աւանդօրէն կը յիշատակէին Պատարագի մէջ Կիլիկիոյ Կաթողիկոսները, որոնցմէ սակայն իրենք լքուած էին։



5. ԳԱՒԱԶԱՆ ԿԵՍԱՐԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐՈՒ.— Ինչպէս տեսնուեցաւ հաւանօրէն Կեսարիոյ Հայոց Արքեպիսկոպոսական աթոռը հաստատուած էր ԺԱ. դարուն վերջերը, սակայն առաջին առաջնորդները անծանօթ կը մնան։ Իսկ ԺԲ. դարէն յետոյ գրեթէ անընդհատ շարունակուած է Առաջնորդական գաւազանը և այդ աթոռին վրայ նստած են հետեւեալները։

**Յովհաննէս Արքեպիսկոպոս** (1179).— Գրիգոր Տղայ կաթողիկոսի օրով 1179ին Հռոմկլայի մէջ գումարուած ժողովին մասնակցող 32 եպիսկոպոսներէն մին էր Յովհաննէս Արքեպ. Կեսարու Կապադովկիացւոց: Օրմանեան «ամենայն հաւանականութեամբ Կեսարիայէն անցած էր» կ'ըսէ Կիլիկիոյ մայրաքաղաքին Սսոյ արքեպիսկոպոսութեան «Լեւոնի մտերմութիւնը շահած ըլլալով» (Ազգապատում, 1559) սակայն այս մասին գրական փաստ մը չկայ։ Եթէ ճիշդ է ան իր դարուն ամէնէն գործունեայ դէմքերէն մին էր, վասնզի յետոյ եղաւ Յովհաննէս Զ. Սսեցի «մեծաբարոյ» մականուանեալ կաթողիկոսը (1203–1221)։

**Գրիգոր Ապիրատ Պահլաւունի, Շահանի որդի** (....–1194).— Պահլաւունի տոհմէ այս եպիսկոպոսը 1173ին Լամբրոնի եպիսկոպոս էր, ուրկէ 1175ին անցած էր Անտիոքի արքեպիսկոպոսական աթոռը, և «վերջէն Կեսարիոյ արքեպիսկոպոսութեան անցած կը յիշուի» ըստ Օրմանեանի (Ազգապատում, 1495) սակայն դժբախտաբար ի՛նչ աղբիւրէ քաղուած տեղեկութիւն ըլլալը չէ յիշուած։ Այս եկեղեցականը նաև եղած է կաթողիկոս Գրիգոր Զ. Ապիրատ անունով (1194–1203)։

**Ազարիա Եպ.** (1206).— Ձեռագիրի մը յիշատակարանին մէջ կը յիշուի։ Իր մասին ուրիշ ոչ մէկ տեղեկութիւն ունինք։

**Կոստանդին Արքեպ. Կեսարացի** (....1274–1307).— Կոստանդին Կեսարացի որդին էր Թորոս քահանայի (թ. 353, ձեռագիր, Երուսաղէմի մատենադարանի)։ Իր ստորագրութիւնը և գիրը պահուած կը մնան Երուսաղէմ երկու ձեռագիրներու մէջ։ Անիկա եղած է լատինամիտ դպրոցէն և 1297ին պատգամաւոր ղրկուած Արեւելեան կղերի պարագլուխ Սիւնեաց արքեպիսկոպոսին՝ Ստեփանոս Օրբէլեանի մօտ (Օրբ. Բ. 196) զայն և իր համախոհները համոզելու համար, այլ սակայն ձախողած է (Ազգապատում, 1772)։ 1299ին գրել կու տայ Գէորգ Սկեւռացիի «Մեկնութիւն Մարգարէի Եսայեայ» «ձեռամբ Վարդանայ» (թ. 365, Երուսաղէմի) որուն վերջը Կոստանդին եպ. իր իսկ ձեռքով կը գրէ հին բոլորգրով կարծես թէ քիչ մը դողդոջ ձեռքով, նամակի մը բնոյթը ունեցող սա տողերը.

«Ի՛մ սրտիս սենեկի անխզելի կապով միացեալ եւ ոգւոյ չափ սիրեցեալ եղբայր ի Քս. եւ սրբոյ եկեղեցւոյ ստղիւնաբան վարդապետ Եսայեաս ի Քս. Կոստանդին նուաստ Եպս. Կեսարու զհռական ընկալ զողջոյն սբ. վերնատանն եւ ծանիր որ զմեկնիչն զոր խոստացայ թէ յղարկեմ ձեր սրբութեան, նա սվի 'հսր. Վարդան Մրենու եպս. որ բերէ առ ձեզ, աղաչեմ որ երբ գիրս առ ձեզ հասանի նա զձեր բարեօք կենալոյն զորպէսն եւ զզոյգս՝ թէ հասաւ առ ձեզ, գրէ ի՜մեզ եւ ի Քս. սբ՝ աղօթքն յիշէ զմեզ աղաչեմ, եւ զիմ համաշունչ եղբայրս զտր Կոստընդին զեպսն Դուազրկուն, եւ գիրս անկապ է եւ Է. տետրեր, համարն Խ: Ած. վայելել տայ ձեզ, ողջ լեր ի տր.»:

Այս նամակը որ հաւանօրէն ուղղուած է Եսայի Նչեցի՝ ժամանակին բազմահմուտ վարդապետին, որուն թերեւս Կոստանդին եպ. պատահած էր իր դէպ ի Սիւնիք կատարած ճամբորդութեան ատեն, և

խոստացած այս գիրքը ղրկել։ Գէորգ Սկեւռացիի կամ Լամբրոնացիի «Եսայեայ մեկնութիւն»ը խմբագրուած էր 1295ին (տես Հ. Գ. Զարբանէլեան, Պատմ. Հայկ. հին դպրութեան, 1897, էջ 718–723) երկու տարի առաջ Կոստանդինի և Եսայիի իրարու պատահելէն և չորս տարի առաջ այս ձեռագիրին ընդօրինակութենէն։ Կոստանդին եպ. Կեսարիոյ, 1307 Մարտ 19ին Սիսի մէջ գումարուած ժողովով ընտրուեցաւ կաթողիկոս և Մարտ 23ին օծուեցաւ, և իբր համոզուած կաթոլիկ կամ «առաջին աղքարմայ ի Սիս» (Սամուէլ Անեցի, 152) կամ «հերձուածող» (Դաւ. 335 և Զամբռ. 17) ամէն ջանք ըրաւ Սիսի ժողովին որոշումները գործադրելու, սակայն բուռն ընդդիմութեան հանդիպեցաւ և չյաջողեցաւ (տես Ազգապատում, էջ 1813-1825)։ Մեռած է 1322ին վերջերը։



ԿՈՍՏԱՆԴԻՆ ԱՐՔԵՊ. ԿԵՍԱՐԱՑԻԻ ՁԵՌԱԳԻՐԸ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ



**Մարկոս եպ.** (1342).— Աւետարանի մը յիշատակարանին մէջ (Տրդատ եպ. Պալեան, Հայ վանօրայք, Ա. 33) և Սիսի ժողովին մասնակցող 29 եպիսկոպոսներու շարքին կը յիշատակուի նոյն թուականով։

**Թորոս եպ. Կեսարիոյ** (1417).— Այս եպիսկոպոսին անունը փորագրուած է Երուսաղէմի Ս. Յարութեան տաճարին արտաքին միակ մեծ դրան մարմարեայ սիւնին վրայ։ Կ'երեւի թէ 1417 թուականին Երուսաղէմ գացած է ուխտի և անձամբ գրած այդ յիշատակարանը, որուն օրինակն է «Թորոս եպիսկոպոս Ցեւկառու(1) եւ Կեսարիոյ, Յարութիւն, ի Քեզ յանձին թվ. ՊԿԶ» (= 1417) (տես Բիւզանդիոն, թ. 3073)։

**Կիրակոս եպ. Տրապիզոնցի եւ Անդրէաս եպ.** (1460–1495...).— Իրենց կեանքին վրայ տեղեկութիւններ կը պակսին։ Կիրակոսի Տրապիզոնցի ըլլալը Տրդատ եպ. կ'ըսէ (Բիւզանդիոն, թ. 3073) մինչ զինքն յիշող 5 ձեռագիրներ (1469, 1478, 1481, 1484, 1495 թուականներով) լուռ են։ 1478էն յետոյ իր անունին հետ կը յիշուի Անդրէաս եպ.ը երբեմն առաջ և երբեմն վերջը գրուելով, որով հաւասար իրաւամբ կառավարած են. 1484ին գրուած Ճաշոցին մէջ «յԻԴ ամի այսմ նահանգիս Տ. Անդրէասի եւ Տ. Կիրակոսի» բառերը կը ճշդեն անոնց պաշտօնակցութեան սկիզբը։ Տրդատ եպ. Պալեանի՝ Անդրէաս եպ.ը Նիրգէի Ս. Գր. Նիւսացիի վանքին առաջնորդ համարելը ճիշդ չէ։

**Յովհաննէս արքեպիս.** (... 1552–1553).— Կը յիշատակուի 1552ին և 1553ին թուականով երկու ձեռագիրներու մէջ մին գրուած Կեսարիա քաղաքը և միւսը «ի մեծահռչակ Ս. ուխտս ի դուռն Ս. Կարապետի»։

**Ղազար եպ.** (1580).— Մաշտոցի մը յիշատակարանին մէջ գրուած է, ըստ Տրդատ եպ. Պալեանի, «յեպիսկոպոսութեան գաւառին Կեսարիոյ Տ. Ղազար եպ.ի եւ յառաջնորդութեան Տումարծու Ս. Աստուածածնի վանուց Տ. Աստուածատուր եպ. Մշեցւոյ» (Բիւզանդիոն, թ. 3073)։ Իր մասին ուրիշ տեղեկութիւններ չունինք դժբախտաբար(2)։

**Մարտիրոս եպ.** (...1608...).— Այս եպիսկոպոսը կը յիշատակուի 1608ին գրուած ձեռագիրի մը յիշատակարանին մէջ ուրիշ եկեղեցականի մը հետ սա կերպով. «յառաջնորդութեան քաղաքիս քաջ եւ արի րաբունապետին Գրիգոր վարդապետին եւ Մարտիրոս եպիսկոպոսին»։

Արդ տրուած ըլլալով որ իրեն հետ յիշուած եկեղեցականը՝ համբաւաւոր Գրիգոր Կեսարացին, թէև կը յիշուի 1601ին, սակայն առանց

(1) Մկրտիչ եպ. Աղաւնունի «Ցեւկասու» կը կարդայ (?) նշանով (տես Միաբանք եւ Այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 162)։

(2) Տրդատ եպ. Պալեան (Հայ վանօրայք, էջ 35–36) Յովհաննէս արքեպ.ի իբր յաջորդ կը յիշատակէ Աստուածատուր եպ. Մշեցին, այս Ղազար եպ.ը և ապա Յովհաննէս եպ. Զէյթունցին, չփոթ ձեւով մը։ Աստուածատուր եպ. Մշեցին որուն շատ բան կը պարտի Կեսարիա իբր գրիչ և ուսուցիչ, իբր Կեսարիոյ եպիսկոպոս ոչ մէկ տեղ յիշուած է։ Իր գործունէութեան դաշտը գլխաւորաբար Թոմարզայի Ս. Աստուածածին վանքն է որուն առաջնորդ ալ եղած է, ինչպէս վերոգրեալ յիշատակարանը ցոյց կու տայ։ Իսկ Յովհաննէս եպ. Զէյթունցին 1588 թուականով ձեռագիրի մը մէջ յիշուած է Թոմարզայի վանքին առաջնորդ և երբեք Կեսարիոյ եպիսկոպոս. հետեւաբար ես զանոնք ցուցակի չանցուցի։ Տրդատ եպ. Պալեան կ'ըսէ թէ 1602ին յիշատակուած է։ Այս տեսակ յիշատակարան մը ինծի անծանօթ է։

Կեսարիոյ եպիսկոպոսի տիտղոսին, և 1606-7 թուականներուն միայն «վերատեսուչ մայրաքաղաքին Կեսարիոյ» կը ներկայանայ, իրաւունք ունենալ կը կարծեմ հետեւցնելու թէ Մարտիրոս եպ. արդէն առաջնորդ էր, երբ Գրիգոր Կեսարացին իր հեղինակաւոր դիրքով իր ծննդավայրին վերատեսչութիւնը ձեռք բերաւ աթոռակցական դրութեամբ, կամ Մարտիրոս եպ. երբ Կեսարացի կը բացակայէր տեղակալեց իրեն։ Մարտիրոս եպ. 1608էն յետոյ այլեւս անգամ մըն ալ չի յիշուիր։ Իր մասին ուրիշ տեղեկութիւն ալ չունինք։

**Գրիգոր Արք. Կեսարացի** (... 1607–1633 ...).—Որդի Եաղուպի և կոչուած երկայնահասակ: Սիրած է կոչուիլ միշտ «վարդապետ»։ Նշանաւոր դէմք որ կատարած է չափազանց ուշագրաւ դեր ԺԷ. դարուն, աւելի Կեսարիայէն դուրս։ Ձեռագրաց յիշատակարաններ զինքը կը յիշատակեն իբր Կեսարիոյ «վերատեսուչ» 1607էն մինչև 1633 թուական։ Իրմէն շատ քիչ բան կը մնայ Կեսարիոյ մէջ։ Ասոնց ամէնէն նշանաւորն է Թոմարզայի մօտ մեծածախս կամուրջի մը շինութիւնը, որ կատարուած է 1621–1632ի միջոցները։ Ան ծնած է Կեսարիա շուրջ 1570ին։ Աշակերտած է՝ ժամանակին ամէնէն զարգացած եկեղեցականներէն, տիեզերալոյս եւ խարազնազգեաց ճգնաւոր» և «անյաղթ փիլիսոփայ» կոչումներով ճանչցուած Սրապիոն Ուռհայեցիի (յետոյ կաթողիկոս) որ Ամիթի մէջ ունէր դպրոց մը և հաստատած էր բազմաթիւ աշակերտներ։ Գրիգոր Կեսարացի, Տիարպէքիրի մէջ անկէ ստացաւ 1595ին վարդապետական գաւազան։ 1601ին սկիզբները Կիլիկիոյ Ազարիա կաթողիկոսին Երուսաղէմի պարտքին համար Ամիթի մէջ գումարած ժողովին որոշումով Տիարպէքիրէն ուղղակի Կ. Պոլիս գնաց ժողովարարութեան համար, և համակրութիւն գտնելով ընտրուեցաւ Պատրիարք, տակաւին վարդապետ։ Կ. Պոլսեցիք կը գրեն «առ կաթողիկոսն Ս. Էջմիածնի ձեռնադրել իւրեանց առաջնորդ»։ Գրիգոր ըստ տեղեկութեան մը ճէլալիներու ապստամբութեան պատճառով չկարենալով ճամբան շարունակել Թօքատէն չեղած է Սիս, կամ ըստ իր յայտարարութեան Կ. Պոլսէն Կեսարիա եկած և անկէ Սիս գացած է իր Երուսաղէմի համար հաւաքած դրամը տալու համար, Կիլիկիոյ նորընծայ Յովհաննէս կաթողիկոսին և իրաւարարութիւն ընելու համար անոր և հակաթոռ Պետրոս կաթողիկոսի միջև, իբր Կ. Պոլսոյ պատրիարք։ Այս առթիւ ի Սիս բնակութեան միջոցին (1602 Մայիս 29–Յունիս 28) կը ձեռնադրուի «եպիսկոպոս եւ առաջնորդ Ստամբօլու»։ Սիսէն ուղղակի կ'երթայ Կ. Պոլիս, իր աթոռը և «անդ արար բազում ուղղութիւնս»։ 1605–1607ի ատենները կ'երթայ Կեսարիա, ուր զինքն կը գտնենք իբր «վերատեսուչ» կամ առաջնորդ։ Սակայն քիչ յետոյ Կ. Պոլսոյ վէքիլներէն կը հրաւիրուի Կ. Պոլիս, ուր 1607ին կուգայ «մեծաւ ամփոփիւ ... անհեղագոյն եւ խռոխս կերպիւ որպէս զառիւծ» (Դարանաղցի, 117) և աններող հակառակութեամբ մը կը հալածէ իր թշնամիները և մանաւանդ եկուորները, հաճելի ըլլալու համար աշխարհական վէքիլներուն որոնց հրաւէրով եկած էր։

Այս պատճառով գաղթականները իրենց հոգեւոր պետ նշանակել կուտան Գրիգոր վրդ. Դարանաղցին որ երկու տարի (1607–1609) այս պաշտօնը կը վարէ։ Գրիգոր Կեսարացի հետզհետէ զօրանալով աւելի կը դառնայ Տեղակալներուն որոնք զինքը զրպարտութիւններու կը մատնեն, սակայն ան կը յաջողի շահիլ բոլոր եկուորները և զանոնք



բողոքի մղել իր հալածիչներուն դէմ, ինքն առանցմասնակցելու վասընզի թագաւորէն պէրաթ չունէր, և հաւանօրէն Տեղակալներու իբր գործակից կը պաշտօնավարէր։

Ժողովուրդին զիմումը կառավարութենէն նպաստաւոր ընդունելութիւն կը գտնէ (1608), սակայն քիչ յետոյ Կեսարացի կ'անցնի դարձեալ աշխարհական վէքիլներու կողմը և կը հալածէ եկուոր քահանաները, և անոնց պետը՝ Դարանաղցին։ Վէճին վերջ տալու համար իրաւախոհութիւն մը կը գոյանայ և Դարանաղցին Ռոտոսթոյ ղրկուելով պատրիարքական երկուութեան վերջ կը տրուի (1609), սակայն Կեսարացի ինքն ալ չի կրնար մնալ և կը վանուի աթոռէն և 1609ին իր աշակերտին Մովսէս վրդ. Տաթեւացիի հետ Եգիպտոս, Սինա և Երուսաղէմ ուխտագնացութենէ մը յետոյ կ'երթայ Տիարպէքիր ուր հաւաքոյթ մը կատարելով Երուսաղէմի պարտքին համար կարգադրութիւն մը ընելու կը յաջողի։ Այս միջոցին Կեսարիա գացած ըլլալը յայտնի չէ։ 1611ին դարձեալ Կ. Պոլիս կը տանին և Պատրիարք կը նստեցնեն Գ. անգամ։ Հոն կը շարունակէ իր բուռն գործունէութիւնը, ինչ որ պատճառ կ'ըլլայ որ հազիւ 6-7 ամիս պաշտօն վարելէ յետոյ իյնայ պատրիարքութենէ և երթայ Կեսարիա իր թեմը, ուրկէ իրեն հետ առնելով իր ձեռնադրիչ Յովհաննէս Այնթապցի Կիլիկիոյ կաթողիկոսը (1602–1622) կուգայ Կ. Պոլիս 1613ի սկիզբները, սակայն Յովհաննէս Խուլ կը յաջողի պետութեան միջոցաւ կաթողիկոսը և իր հետեւորդները աքսորել տալ 25 Մայիս 1613ին։ Կեսարացի սակայն 1615ին դարձեալ Դ. անգամ կը յաջողի գրաւել Կ. Պոլսոյ աթոռը, ուրկէ 1617–1618ին վանուած դարձեալ Կեսարիա կը գտնուէր, երբ Սիմէոն դպիր Լեհացի այցելեց այդ քաղաքը։ Ան կ'ըսէ «գնացի մօտ Գրիգոր վարդապետն, առ որ կացեալ էի, զոր սիրեալ զիս յոյժ ուրախացաւ եւ սիրով զիս ընկալաւ»: Սիմէոն դպիր այս առթիւ կ'ըսէր թէ «վարդապետն ունէր մեծ էգի որպէս քաղաք. եւ անդ բազում անգամ գնացեալ մխիթարեցաք: Եւ ասին թէ նորա էգին տասներկու ազգ խաղող կայ» (ՀԱ. 1935, էջ 91–92)։ Կեսարիա կը մնայ 1618էն մինչև 1625։ 1625ին անկէ դարձեալ կուգայ Կ. Պոլիս Ե. անգամ և կը յաջողի վանել Յովհաննէս Խուլը և աքսորել տալ Պրուսա և ինքն աթոռը գրաւել, սակայն Մելքիսեդեկ կաթողիկոսի և անոր համախոհ եկեղեցականներու դէմ իր ունեցած ատելութենէն դրդուած կաթողիկոսին գործունէութեան արգելք ըլլալու համար և Երզնկացի Յովհաննէս «Պակթամուրի ձագ» մականուանեալ եպ.ը փոխանորդ ձգելով կ'երթայ 1627ին Լեհաստան ուրկէ իբր՝ լրտես Նիկոլ եպ. Թորոսովիչի մատնութեամբ սահմանէն դուրս կը հանուի։ Կեսարացին Պուղտանայ երկիրէն (Ռումանիա) Նիկոլի դէմ բանադրանք արձակելով կը դառնայ Կ. Պոլիս, խռովութեան մատնելով Լեհահայերը։

Մինչև իր դարձը սակայն, Կ. Պոլսոյ պատրիարքութիւնը յափշտակուած էր Զաքարիա Վանեցիէն (1629)։ Կեսարացի ուղղակի կ'երթայ իր թեմը ուր կը գտնենք զինքը 1629էն 1632։ 1633ին կ'երթայ Սիս և կաթողիկոսի ընտրութեան կը նախագահէ, և Սիմէոն Սեբաստացիի օծումէն յետոյ կ'երթայ Կ. Պոլիս նոր կաթողիկոսին հետ և կը յաջողի գրաւել դարձեալ Պատրիարքութիւնը, ժողովուրդին յօժարութեամբը։ Այս անգամ կը պաշտօնավարէ մինչև իր մահը՝ 1636։

Գրիգոր Կեսարացի իր ժամանակին զարգացած եկեղեցականներէն

էր, գրաբարի հմուտ և բանաստեղծ։ «Էր վկայեալ յամենեցունց եւ յոյժ հմուտ աստուածայնոց հին եւ նոր կտակարանաց նաեւ տեղեակ արտաքնոցն հանճարաց» և «բանիբուն եւ սիրող իմաստասիրական հանճարոյ» «քաջ հռետոր» «քաջ եւ անյաղթ փիլիսոփայ»:

Ունի գանձեր և տաղեր։ Մասնաւորապէս ունի ողբեր իր ուսուցիչին՝ Սրապիոն կաթողիկոսի (†1606 Ապրիլ 24) մահուան առթիւ։ Ան ունէր «ներբողեալ աղօթք հոգեխառն, մաղթողականք ի Ս. Պատարագին, ի դէմս ամենասուրբ երրորդութեանն եւ մի աստուածութեանն»: Ան գրած էր նաև «Քարոզգիրք», «Դատաստանագիրք» և «Կանոնագիրք»: Հմուտ էր նաև ժամանակին գիտութեանց «Ուսուցչապին եւ երկրաչափականին լի եւ անքերի»: Երկու գիրք յօրինած է «Թուականք եւ պատմութիւնք յԱդամայ մինչեւ ի մեր ՌՁԵ (=1636) թուին» որոնց համար «աշխատեալ (էր) մինչեւ վախճան իւր»: Գրիգոր վրդ. թարգմանած էր արաբերէնէ, Ուսուցչապի գիրք մը։ Շինած է նաև երկրագունդ մը հայերէն գիրով և լեզուով։

Նոյնպէս կ'երեւի թէ Գր. վրդ. Կեսարացի կատարած էր սրբագրութիւններ։ Երուսաղէմ տեսայ Սաղմոս մը (թ. 1596) 1672ին Կ. Պոլիս գրուած որուն օրինակը «էր սրբագրեալ, Կեսարացի Գրիգոր վրդ.ն որոյ կայ դամբարան 'ի Գալաթիա Ս. Լուսաւորչի եկեղեցին»: Կեսարացի շատ աշխատած է իր «մեծ վարդապետին» Սրապիոնի կտակին համաձայն Աստուածաշունչի տպագրութիւնը կատարելու և Ս. Գիրքը հանրութեան մատչելի դարձնելու, սակայն չէ յաջողած (Յիսուս որդի, 1643. կամ Նոր Մատենագիտութիւն, Բ. հտ. 224)։

Գրիգոր Կեսարացի չափազանց խստակրօն, Հայ եկեղեցւոյ աւանդութեան սաստիկ նախանձախնդիր եկեղեցական մը եղած է։ Ունեցած է ճոխ մատենադարան մը, որ կտակած է զանազաններու, սակայն զինքը Գալաթիոյ եկեղեցին թաղելու համար Շահին Չէլէպիի ըրած ծախքերը, որպէսզի հատուցուին թէ՛ այդ գիրքերը և թէ՛ այգին ծախել կը պարտաւորուի իր եղբօրորդին Տ. Յակոբ քհ. Կեսարացի։

Իր աշակերտներն են Մովսէս Տաթեւացի նշանաւոր կաթողիկոսը և Սիւնեաց դպրոցին վերանորոգիչը, Յովհ. վրդ. Ունհայեցի, Ազարիա փիլիսոփայ վրդ. Տարօնցի, Յակոբ եպ. Քէօթահեացի եւլն.։

**Դաւիթ Եպ.** (1633–1638....). — Երկու գրչագրի յիշատակարաններ 1637–38ին, կը յիշատակեն զինքը իբր Առաջնորդ կամ Հայրապետ «Կեսարու նահանգին»։ Կիլիկիոյ Սիմէոն կաթողիկոսը (1633-48) իր առ Փիլիպպոս կաթողիկոս (1633–1655) ուղղած թուղթին մէջ (1), Գրիգոր Կեսարացին եպիսկոպոս ձեռնադրող Յովհաննէս Այնթապցի կաթողիկոսէն (1623†) ձեռնադրուած եպիսկոպոսներու շարքին կը յիշատակէ նաև «զԴաւիթ եպիսկոպոսն Կեսարիոյ որ այժմ առաջնորդ է»: Ուրեմն Դաւիթ եպ. ամէնէն ուշ 1622ին եպիսկոպոս ձեռնադրուած էր, Գրիգոր Կեսարացիի ողջ և Կեսարիոյ առաջնորդ եղած ատեն։ Հետեւաբար անոր կենդանութեան իբր փոխանորդ գործած է, գէթ 1628 թուականէն սկսեալ, եթէ ոչ աւելի կանուխ, մանաւանդ անոր բացակայութեան ատեն, և անմիջապէս անոր յաջորդած է իբր Առաջ-

(1) Այս թուղթին գրութեան թուականը չէ նշանակուած։ Հ. Դր. Գալէմքեարեան (ՀԱ. 1911, էջ 24) 1634ին կամ 1635ին գրուած կ'ենթադրէ, մինչ Օրմանեան (Ազգապատում, էջ 2446) որոշ տուեալներու վրայ կը հաստատէ թէ առնուազն 1638ին կրնայ գրուած ըլլալ։



նորդ։ «Որ այժմ առաջնորդ է» բառերը յատկանշական են և ցարդ ողջ է չեն նշանակեր այլ հիմա առաջնորդ եղաւ մինչ ձեռնադրուած ատեն չէր։ Այս մեկնութեամբ ինքն կը դառնայ անմիջական յաջորդը Գրիգոր Կեսարացիին որուն մինչև 1633 Կեսարիոյ առաջնորդութիւնը պահած ըլլալը, ամէն տարակոյսէ դուրս է։

Նոյնպէս անկէ պարզօրէն կարելի է հետեւցնել թէ Դաւիթ եպս. Գրիգոր Կեսարացիի աշակերտներէն մին էր։

Դժբախտաբար իր պաշտօնավարութիւնը մինչեւ ե՞րբ տեւած ըլլալուն մասին ոեւէ ծանօթութիւն չունինք,

Հաւանօրէն 1644էն առաջ պէտք է հրաժարած կամ մեռած ըլլայ վասնզի եթէ ողջ ըլլար անցորդ եպիսկոպոսի մը(1) Կեսարացիք քահանայական ձեռնադրութիւն ընել տալու պէտք պիտի չունենային, և Դաւիթ եպ. իբր վիճակին եպիսկոպոսը ինքն պիտի կատարէր։

**Թորոս Եպ. Սսեցի** (....–1654). — Կեսարիոյ առաջնորդութենէն կոչուած է Կիլիկիոյ կաթողիկոսութեան 1654 Նոյեմբերին։ Հաւանօրէն 1640ական թուականներէն սկսեալ պաշտօնավարած է։

1655 Հոկտ. 6ին գացած է Կ. Պոլիս և Հոկտ. 17ին՝ Էտիրնէ։ 1 Դեկտ. 1655ին կը դառնայ Կ. Պոլիս և 11 Դեկտ.ին «ընդհանուր ազգային ժողով արար, վասն խռովութեանն որ կայր ի մէջ Յոհաննու Մուղնեցւոյ, Ռուհիջանեայ Վանեցւոյ եւ այլոց տեղակալաց եւ բազում ջանիւք խաղաղացոյց պատժելով զՄուղնեցի Օհանն, զՎարդան Տարապհանանին եւ զԱստուածատուր Պարմախսուզն»:

1657 Ապրիլ 29ին կը վախճանի Կ. Պոլիս և մեծաշուք յուղարկաւորութեամբ կը թաղուի Պալըգլըի գերեզմանատունը։

**Գրիգոր Վրդ.** (1655?–1662). — Հաւանական յաջորդ նախորդին։ 1658ին կը յիշուի ձեռագիրի մը մէջ իբր «առաքելաշնորհ արհի երջանիկ րաբունապետ»։

1655էն 1662 կրնայ պաշտօնավարած ըլլալ։

**Մարկոս Եպ.** (1662–1681....). — Երկար պաշտօնավարութիւն ունեցած է, վասնզի բազմաթիւ յիշատակարաններ 1662 թուականէն մինչեւ 1681 գրեթէ անընդհատաբար զինքն կը յիշատակեն իբր Կեսարիոյ առաջնորդ «եպիսկոպոս» տիտղոսով։

Տրդատ եպ. Պալեան (Հայ Վանորայք, էջ 41) կ'ըսէ թէ ան «ուրիշ յիշատակարաններէն... կը հասկցուի, չի գիտցուիր ինչ պատճառներով, 1664 թուականին կը քաշուի Տէրէվանքի Ս. Սարգիս վանքը, ուր կը մնայ մինչեւ 1668 թուականին վերջերը, և ուրտեղ վանահայրութեան պաշտօն ալ կը կատարէ, և ապա կրկին անգամ կու գայ Ս. Կարապետի վանքը և իր պաշտօնին գլուխը կ'անցնի և կը շարունակէ մինչև 1682»։ Այս տողերը արդարացնող փաստերը ինծի անծանօթ ըլլալով վերապահութիւն ունիմ այս մասին։

Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան (տես Ընդարձակ Օրացոյց, 1928, Կ. Պոլիս, էջ 231) իբր յաջորդ Մարկոս եպ.ի կը նշանակեն Կարապետ

(1) Լեհաստանի կողմերէն Անտոն եպ. զոր 1644 Մայիս 9ին Սիսի մէջ ձեռնադրուելէ յետոյ Սիմէոն կաթողիկոսէն, իր առաջին ձեռնադրութիւնը կը կատարէ «Խայիսարու Ս. Սարգիսու ժամ Յովհաննէս անուն Բարձրբերդցի»ի վրայ 1644 Օգոստ. 1ին. (Տաշեան Մ. Ցուցակ, էջ 775)։

եպ. Կեսարացին (այլ անունամբ Կրպօ Երէց) որ Կ. Պոլսոյ պատրիարք եղած է հինգ անգամ (1676-1679, 1680-1681, 1681-1684, 1686-1687, 1688-1689) և ըստ իրենց «հաւանաբար Ս. Կարապետի միաբաններէն եղած ըլլալու է»։

Դժբախտաբար ո՛չ պատմութիւնը և ո՛չ ալ ժամանակագրութիւնը կ՚արդարացնեն այս տեսութիւնը։ Կրպօ Երէց 1676ին պարզ քահանայ էր երբ պատրիարքական աթոռը գրաւեց Մարտիրոս Քէֆէցիի ջանքերով, հետեւաբար Ս. Կարապետի միաբան չէր։ 1680ին Մարտիրոս Քէֆէցիէն վարդապետ և 1681 մարտին ալ եպիսկոպոս ձեռնադրուեցաւ Կ. Պոլսոյ մէջ։ Երբեք հաւանական չէ որ Կեսարիոյ առաջնորդութիւնը վարած ըլլայ 1689էն առաջ, իսկ անկէ յետոյ ալ նոյնպէս հաւանական չէ, վասնզի արդէն հոն կը տեսնենք ուրիշներ։

**Գրիգոր Արք.** (1683).— Յայսմաւուրքի մը յիշատակարանին մէջ կը յիշատակուի այս եկեղեցականը իբր առաջնորդ «Քաջ րաբունապետ», «արհի եպիսկոպոս» և «աստուածաբան վարդապետ» տիտղոսներով։ Տրդատ եպ. Պալեան կ՚ըսէ թէ «ուրիշ մէկ ձեռագիրի յիշատակարանին մէջ ալ յիշուած է «անմեղուկ» յորջորջումով» (Հայ վանօրայք, 42)։ Կ՚երեւայ թէ շատ կարճ պաշտօնավարութիւն մը ունեցած է, վասնզի 1681-1685 միջոցին է որ միայն իրմով կրնայ լեցուիլ։

**Աւետիս եպ.** (...—1685—...).— Կը յիշատակուի 1685ին գրչագրուած ձեռագիրի մը մէջ (Տրդատ եպ. Պալեան, Հայ վանօրայք, 42)։ Ըստ իրեն «աւանդաբար կ՚ըսուի թէ վանքին մէջ քանի չափ սենեակներ և նաև ջրհոր մը շինել տուած է» (Նոյն) ըստ հէօճէլթի մը (Վտարանդին, Մասիս, թ. 3847)։

**Ղափանեցի Մատթէոս վրդ. Կեսարացի Սարը**(?).— Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան (Ընդ. Օրացոյց, 1928, էջ 231) առաջնորդ կը ներկայացնեն այս եկեղեցականը, որ թերեւս 1695-1692 եօթս տարիներու միջոցի պահ մը առաջնորդ եղած ըլլայ, սակայն որոշ փաստ մը չկայ։ Ըստ աւանդութեան Կ. Պոլիս կ՚երթայ վանքին դառն վիճակին դարման մը գտնելու համար, վասնզի Տէրէպէյիք և Ճէնիչէրիք շատ կը նեղէին (Մասիս, թ. 3847)։ Մատթէոս համակրութիւն կը շահի և Կ. Պոլսոյ պատրիարք կը դառնայ 1692ին և ապա 1694ին Կիլիկիոյ կաթողիկոս, ուրկէ պաշտօնանկ՝ կ՚երթայ Կ. Պոլիս 1706ին և 1706 Ապրիլ 7ին երեք եպիսկոպոսներ կը ձեռնադրէ Մայր եկեղեցիին մէջ։ Քանի մը ամիս յետոյ գլխատումէ ազատելու համար իսլամացաւ և յետոյ Հռոմ ապաստանեցաւ (1712) ուր մեռաւ 1727ին.

**Յովսէփ վրդ. Ամանօղլու** (...1693-1705...).— Սարմըսաքլը գիւղէն էր։ Կը յիշուի 1693ին (Հայ վանօրայք, 43) և 1705ին գրուած երկու ձեռագիրներու մէջ, որով անմիջապէս պէտք է յաջորդած ըլլայ Մատթէոս Սարըի։ Ասիկա աշակերտն էր Եղիազար Այնթապցիի որուն փոթորկալից գործունէութեան մէջ ունեցած է իր բաժինը։ Ուսուցիչն էր Աբրահամ Կրետացի կաթողիկոսին։ Եղած է Երուսաղէմի Կ. Պոլսոյ Փոխանորդ (1659-1660)։ 1664ին Եղիազարի հետ Կ. Պոլիս եկած և անկէ ընդհ. նուիրակ կարգուած է, և շրջած Անատոլու և Ռումէլի։ 1703ին՝ Աւետիք պատրիարքը երբ էտիրնէէն Կ. Պոլիս կու գար Չորլուի մէջ դիմաւորեց և զգուշացուց և սակայն ան մտիկ չըրաւ։ Աման Օղլու աւելի հաւանական է ենթադրել թէ 1704-1705ին կարճ պաշտօնավարութիւն մը ունեցած է Կեսարիա, եթէ 1693ին Կեսարիոյ առաջնորդութիւնը պահելով չէ որ 1696ին Թօգաթ և 1703ին Թէքիրտաղ նուիրակ գացած է։



Յովսէփ վրդ. Ամանզատէ թաղուած էր «ի դրան առաջի սրբոյ եկեղեցւոյ Աստուածածինի», ուր յետոյ իր քովը ամփոփուած է Տ. Մկրտիչ քհ. որդեգիրը որ մեռած է 1728ին։

**Վրթանէս եպ. Ստեփանեան Կեսարացի** (1706-1720).— 1706ին Էջմիածնայ մէջ կը ձեռնադրուի Կեսարիոյ Ճիթեմին վրայ, սակայն կասկածելի է որ իրապէս պաշտօն վարած ըլլայ, հակառակ անոր որ 15 տարի (1706-1720) իր վրայ կրած է Կեսարիոյ Արքեպիսկոպոսի տիտղոսը սոսկ անուանապէս։ Ծնած էր 1661ին Կեսարիա, և աշակերտ է Գաղատիոյ առաջնորդ (1670-1694) Ստեփաննոս Սաչլը վրդ.ին (†29 Ապրիլ 1700 ի Զէյթուն), իբր միաբան տեղւոյ Ս. Աստուածածին վանքին։ Հոն կը մտի Կաթոլիկութեան։ 1705-6ին Կ. Պոլիս կ՚երթայ և անկէ Էջմիածին ուր կը ձեռնադրուի Կեսարիոյ եպիսկոպոս, սակայն երբեք չ՚երթար հոն, հաւանօրէն մերժուած ըլլալով իր գաղափարներուն համար, վասնզի այդ 15 տարիներու ընթացքին երեք ուրիշ անձեր իբր առաջնորդ կը յիշուին։ 1716էն 1720 Էջմիածինի Կ. Պոլսոյ նուիրակ եղած է։ Յետոյ գացած է Հռոմ և պաշտօնապէս կաթոլիկ դաւանութիւնը ընդունած և դարձած է ձեռնադրիչ Հայ ծիսի, և այս պաշտօնով մնացած է Հռոմ մինչև իր մահը 3 Մարտ 1761։

**Դաւիթ եպ. Կեսարիոյ** (...—1709—...).— Կը յիշուի 1709ին գրուած Աւետարանի մը մէջ (Հայ վանօրայք, 43)։ Վտարանդին (տես Մասիս. 1886 Նոյ. 8. թ. 3847) կը գրէ թէ «1709ին վանահայր եղաւ ... Դաւիթ վարդապետ։ Հայր Դաւիթ կը յաջողի միաբանաց թիւը աւելցնել, վանուց արտաքին աղբիւրը շինել, նաեւ պարտէզ մը»։ Տրդատ եպ. կը կարծէ թէ միայն տարի մը պաշտօնավարած է, սակայն կարելի է ենթադրել թէ նոյնիսկ Վրթանէս Արքեպ.ը փոխանորդած է 1706էն սկսեալ։

**Յովնան վրդ.** (...—1711—...).— 1711ին Էֆքէրէ գրուած Աւետարանի մը մէջ կը կարդացուի «ի յառաջնորդութեան յայսմ նահանգիս Կեսարիոյ Կապադովկացոց, ընդ հովանեաւ Սբ. Ստեփաննոսի ... և սպասաւոր Սբ. Կարապետիս Յովնան վարդապետի միջնորդութեամբ...» (Հայ վանօրայք, 43-44)։ Յատկապէս Սբ. Կարապետի սպասաւոր» բացատրութեան գործածութիւնը կերպով մը կը շեշտէ կարծես իր սոսկ վանահայրի հանգամանքը։ Իր եպիսկոպոս եւ Էֆքէրէցի ըլլալը հաստատող ապացոյց չկայ, թէեւ Տրդատ եպ. կը հաւաստէ։ Յովնան վրդ. 1711ին հաւանօրէն յաջորդած է 1709ին պաշտօնավարող Դաւիթի։

**Սահակ վրդ.** (...—1717-1719—...).— Կը յիշատակուի 1717ին, 1718ին և 1719ին գրուած ձեռագիրներու մէջ, իբր «աստուածաբան վարդապետ», նաև «եպիսկոպոս նահանգին եւ առաջնորդ»։ Բացատրութեան այս ձեւը կը մղէ ենթադրել թէ Վրթանէս Արքեպ. 1717ին ստանձնած ըլլալով Կ. Պոլսոյ նուիրակութիւնը, բոլորովին քաշուած է Կեսարիոյ առաջնորդութենէն և Սահակ վրդ. ստանձնած է նոյն պաշտօնը։ Իր օրով պատահած է 1717 Ապրիլ 26ին մեծ երկրաշարժը որ քաղաքին մէկ քառորդին փլուզումին և 3000 անձերու կորուստին պատճառ եղած է։ Ս. Կարապետի վանքն ալ մեծ վնասի ենթարկուած է։

**Պետրոս վրդ. Կիւրինցի** (1721-1729).— Կը յիշուի 1721ին, 1728ին և 1729ին գրուած երեք յիշատակարաններու մէջ։ Իր օրով, 1729ին նորոգուած է Ս. Կարապետի վանքը (տես վարը)։ Այս Պետրոս վրդ.

*Կիւրիւնցիի մօտաւորապէս տասնեակ մը տարիներու պաշտօնավարութեան ընթացքին կը յիշուին անշուշտ սոսկ իբր վանահայր Ս. Կարապետի և ուրիշ վանքերու եպիսկոպոսներ և վարդապետներ, որոնք Տրդատ եպ. անուշադրութեամբ Առաջնորդ-վանահայրեր նշանակած է։ Այսպէս Պետրոս վրդ.ի իբր «եպիսկոպոս Կեսարիոյ» պաշտօնավարութեան ընթացքին* (1721-1729) *կը յիշուին հետեւեալները նաև իբր առաջնորդ՝ հին իմաստով իբր վանահայր։ Ահա անոնք որ ծանօթ են։*

**Յակոբ վրդ.** (...—1721-25—...).— 1721ին յիշատակարանի մը մէջ բուած է. «*ի յառաջնորդութեան յայսմ Նահանգիս Կեսարիոյ Կապադովկիացւոց Յակոբ վարդապետի, ընդ Սբ. Կարապետիս և Սբ. Ստեփաննոսիս և այլ բազմահաւաք սրբոցս որ աստ կան...*»։ Յիշատակարանին «*ընդ Սբ. Կարապետիս և Սբ. Ստեփաննոսիս*» բացատրութեան այս ձեւը նորօրինակ է, եւ նշան մը կրնայ նկատուիլ իր վանահայրի հանգամանքին։

Իսկ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին թանգարանը պահուած եւ 1725ին Էճքէրէ գրուած Սարգիս Շնորհալիի մեկնութիւն Կաթողիկեայց գործին զանազան էջերուն վրայ (էջ 742, 866, 926) փոքրիկ յիշատակարաններու մէջ «*Յակոբ վարդապետի*» (որ անգամ մը «*րաբունապետ*» կը կոչուի) իբրեւ ստացողի եւ Յովակիմ դպրի իբր ընդօրինակողի կը հանդիպինք։

Տրդատ եպ. Պալեան կը հաւաստէ թէ այս եկեղեցականը յիշատակուած է նաեւ 1724 եւ 1725 թուականներուն գրչագրուած ձեռագիր մասեաններուն մէջ, Եսայի եպ.ի մը հետ։ Դժբախտաբար աչքի տակ չունինք այս յիշատակարանները։ 1730ին Եսայիի յիշատակութիւնը բացորոշ ցոյց կու տայ թէ անիկա Տէրէվանքի վանահայրն է։

Բազմաթիւ այլ յիշատակարաններ ալ կը հաստատեն Եսայի վրդ.ի 'ի Տէրէվանք պաշտօնավարութիւնը (1725-1735) այնպէս որ եթէ Յակոբ եւ Եսայի զոյգ յիշուած են 1724 եւ 1725 թուականներուն, սոսկ իբր վանահայրներ պէտք է յիշատակուած ըլլան, մին Ս. Կարապետի եւ միւսը՝ Տէրէվանքի։ Մասնաւորապէս 1725ին Յակոբ վրդ.ի տրուած *րաբունապետ* տիտղոսը աւելի կերպով կ'արդարացնէ այս տեսութիւնը։

**Մաղաքիա վրդ. Աբրահամեան** (...— 1729 — ...) կը յիշատակուի հիճրէթի 1142 (1729) թուականին տրուած պէրաթի մը եւ նոյն թուականին ալ Կեսարիոյ դատաւորին կողմէ տրուած հիւճէթի մը մէջ «*Ռահիպ Մաղաքիա*» Աբրահամեան մականունով (Հայ վանօրայք, 45-46)։

Քանի որ տակաւին Պետրոս վրդ. Կիւրիւնցի պաշտօնի մէջ էր Մաղաքիա վրդ. սոսկ վանահայր մը կրնար ըլլալ իմ տեսութեամբս։

**Կարապետ Արքեպ. Կեսարիոյ** (1729-1731).— *Հ. Ալիշան* (Հայ Վենետ, *էջ* 343) *կը յիշատակէ Կեսարիոյ Արքեպիսկոպոս Կարապետ անուն եկեղեցական մը որ Վենետիկ այցելած է և անցած է յետոյ Թրիէստ ուր վախճանած* 1743*ին։*

*Հաւանօրէն իր կաթոլիկ միտումներուն համար՝ ձեռնադրուած այլ սակայն անուանական կերպով այդ տիտղոսը կրող եկեղեցական մը ըլլալ կը թուի։ Նկատելով որ* 1731*էն յետոյ ալ ընդհատում չկայ առաջնորդներու շարքին մէջ, հաւանական կը նկատեմ որ իր ձեռնադրութիւնը ստացած ըլլայ* 1729*ին կամ* 1730*ին իբր յաջորդ Պետրոս վրդ. Կիւրիւնցիի և ապա մերժուած անցած ըլլայ Եւրոպա։ Իր մասին ուրիշ տեղեկութիւն չկայ։*

**Սարգիս Արքեպս. Սարաճեան** (1730-1738).— *Ծնած է* 1699 *Փետրուարին Էտիրնէ, որդի Ակնցի Սարաֆ Ալիքսանի։* 1719*ին կ'աշակերտի Յովհաննէս Կոլոտ պատրիարքի հիմնած դպրոցին։* 1722*ին Սարկաւագ և* 1726*ին աբեղայ և* 1727*ին վարդապետ կը ձեռնադրուի։ Կեսարիոյ առաջնորդը մեռած ըլլալով Կեսարացիք զայն առաջնորդ կ'ուզեն և վերջապէս Գրիգոր Շղթայակիրի միջնորդութեամբ կը յաջողին համոզել Կոլոտը որ* 1731*ին արքունի հրովարտակով զայն կը ղրկէ Կեսարիա՝ ընկերակցութեամբ Յակոբ Նալեանի, որ քանի մը ամիսէն կը դառնայ Կ. Պոլիս։*

*Սարգիս վրդ. Կիլիկիոյ մէջ ժողովարարութիւն ընելով Ս. Կարապետի վանքին պարտքը վճարեց, և գնաց Կ. Պոլիս՝ ուրկէ* 1734*ին անցաւ Էջմիածին և Նոյեմ.* 25*ին Աբրահամ կաթողիկոս Կրէտացիէն «ըստ խնդրոյ ամենայն ժողովրդեան և համայն քահանայից և իշխանաց Մեծին Կեսարիոյ» բարձրացաւ* «ի գերապատիւ աստիճան Արհի եպիսկոպոսութեան, ի վերայ Մեծի Աթոռոյն. Սրբոյն Ղեւոնդեայ, որ ի Կապադովկացւոց Կեսարիա եւ հոգաբարձու եւ այցելու Սրբոյն Յոհաննու Մկրտչի Դամբարանի եւ նորին հրաշագործ նշխարացն, եւ այլ՝ պէս պէս սրբազնութեանց որք անդ կան հաւաքեալ, ի պահպանութիւն եւ ի պարծանս ազգիս մերոյ» *և պսակաւորեց* «զնա նորագոյն մականունութեամբ ըստ արդեանցն եւ ըստ արժանաւորութեան, կոչելով զնա Սարգիս Շնորհալի, վասն շնորհաբուղխ եւ յորդառատ Սրբոյ քարոզութեանն եւ այլոց արդեանցն»։

1735*ին դարձաւ իր թեմը և նոյն տարին Կ. Պոլիս այցելեց Կոլոտի։*

*Քիչ յետոյ Կեսարացիք նշմարեցին իր դէպի կաթոլիկութիւն միտումները և ահագին աղմուկ հանեցին։ Սարգիս Արքեպ.* 1737*ին գնաց Կ. Պոլիս և* 1738*ին հրաժարեցաւ առաջնորդութենէ* «անկրթելի Կեսարացւոց» *ընթացքէն զզուած։ Կոլոտ զայն ղրկեց Գաղատիա* (1738-1740)*։* 1743 *Յունվար* 29*ին կաթոլիկութիւնը ընդունեց Զմիւռնիոյ մէջ.* 1744*ին անցաւ Եւրոպա և Վենետիկ հաստատուեցաւ։* 1745*ին այցելեց Հռոմ։* 1747*ին Վենետիկ Հայ տղոց դպրոց մը բացաւ, սակայն չկրցաւ շարունակել։* 1747*էն* 1752, 15 *կտոր մեծ ու փոքր գիրքեր տպեց։* 1753*ին դարձեալ Հռոմ և անդի Լիվոռնո* (1754) *և ապա Զմիւռնիա գնաց, յետոյ Պրուսա, և Կ. Պոլիս։ Նալեանի առաջարկով Ռոտոսթոյի առաջնորդ կարգուեցաւ, ուրկէ աքսորուեցաւ Քիոս։ Ներումով դարձաւ Կ. Պոլիս և անուանապէս Թոգաթի առաջնորդութիւնը ստանձնեց և մէկ տարի յետոյ հրաժարեցաւ և երկար տարիներ Կ. Պոլիս մնալէ յետոյ* 29 *Սեպտ.* 1772*ին գաղտնի մեկնեցաւ Արեւմուտք և* 1773 *Հոկտ.* 2*ին վախճանեցաւ Լիվոռնոյի մէջ։*

*Նկատելի է որ Սարգիս Արքեպ. Սարաֆեան միշտ սիրած է գործածել* «Կեսարիոյ Արքեպիսկոպոս» *տիտղոսը. (իր ընդարձակ կենսագրութիւնը գրած է Հ. Գր. Ծվրդ. Գալէմքեարեան,* Կենսագրութիւն Սարգիս Արքեպ. Սարաճեան եւ ժամանակին Հայ Կաթողիկեայք. *Վիէննա*, 1908)։

**Աւետիք Եպ. Եւդոկիացի** (1738-1744 *Հոկտ.* 10 †). — *Պաշտօնավարած է վեց տարիներ, սկսեալ* 1738*էն*(1)։ *Թաղուած է Ս. Կարապետի վանքը առաջնորդներու յատուկ գերեզմանատան մէջ։ Աւետիք*

(1) *Տրդատ եպ.* (Հայ Վանօրայք, 47) 1734 *կը նշանակէ, սակայն վաւերագիրներ չեն հաստատեր։ Հաւանօրէն* 1734-1738*ին ան գործած է իբր փոխանորդ վանքի Սարգիս եպ. Սարաֆեան այդ թուականէն յետոյ յաճախ բացակայած է։*

եպ. գործունեայ դէմք մըն է որ շինութիւններ ըրած է վանքին մէջ։ Իր օրով վանքը ունէր 16 միաբաններ որոնց գլխաւորն էր Դաւիթ վրդ. որ մեծ և կարեւոր գործակցութիւն մը ունեցած է իր հոգեւոր հօրը՝ Աւետիքի հետ և ապա անոր յաջորդած։

Դաւիթ եպ. Ս. Կարապետ վանքի գանձատան մէջ մինչև վերջը պահուած ձեռագիր բոլորագիր խորհրդատետրի մը յիշատակարանին մէջ, նշանակելով իր հոգեւոր հօրը մահը, կը խօսի անոր կրթական և շինարարական գործունէութեան վրայ յիշելով նոյնիսկ յանուանէ իր բազմահոյլ աշակերտները և կատարած շինութիւնները։

Այսպէս կը յիշատակէ «մեծագնոյ բազում ծախիւք անսահման աղբիւր մի՝ չորորդ անկեան» վանքին հաստատուած, այն երբքէն զատ որ արդէն կային վանքին մէջ։ Նոյնպէս սրբոց մասունքները մեծագին արծաթ պատեաններու մէջ առած է մինչ նախապէս թիթեղի մէջ կը պահուէին։ Գնած է նաև բազմաթիւ ագարակներ և այգիներ և կցած Ս. Կարապետի հողերուն։ Յիշատակարանը կ'ըսէ «առյ է պատճառ կրօնից կարգադրութեանն», որով կը յայտնուի թէ իր նախորդին օրով յուզուած կրօնական վէճերուն վերջ տուած է։ Նոյնպէս վերանորոգած է Ս. Դանիէլի վանքը ու մշակած վանքին հողերը և ոչխարի հօտեր կազմած Հայոց գերեզմանին դէմ շինելով փարախ մը։ Կառուցած է միաբաններուն համար հասարակաց սեղանատուն մը, աթոռ և ամպիոն հաստատած, «լայնածիք մեծափառ սփնիոյ սեղան» սահմանած, ինչպէս նաև վանքին մէջ պարտէզ մը մշակել տուած է ուր արեղաները կը զուարճանային ծաղիկներով և պտուղներով։ Շինած է բազում անօթեղէններ և 13 գեղեցիկ շապիկներ և այլ։

Իր մասին ուրիշ կենսագրական ծանօթութիւններ կը պակսին։

Հ. Գր. Ծվրդ. Գալէմքեարեան (Սարգիս Արքեպ. Սարաֆեան, 179) կ'ըսէ թէ անիկա Կոլոտ Յովհաննէս պատրիարքի աշակերտն էր։

Կոլոտի աշակերտներուն մէջ արդարև կար Աւետիք մը մականուանեալն «Նաւն Պետրոսեան» (տես էջ 71, Բաբգէն Ծվրդ. Կիւլէսէրեան, Կոլոտ Յովհաննէս պատրիարք, 1904) սակայն փաստ մը չկայ թէ անիկա նոյնն է Կեսարիոյ առաջնորդին հետ։

Աւետիք եպ.ի տապանաքարին վրայ հետեւեալն գրուած էր.

«(Տ)ապանս մի ոք խախտեսցիք, եւ թէ . . . անդգնիք ձեռնամուխ լիցիք, զՈւթայի երեսուն արծաթի մասն լիցիք, նզովիւքն Մարանաթայի կամօք առ ձեզ անձնեցիք. Է.Ա.Մ.Ա.Վ.Ց.Ե.Մ.Չ.Ջ.Ր.Ք.Ո.Կ.Ք.Ա.Ֆ.Լ.Ե.Դ.Ք.Չ.Է: Թոխաթցի Աւետիք վարդապետն է:

«Ես ոք ծառայ Դաւիթ որդի, զտապանն ոք զարդարեցի, մեռելութիւնդ ոք տարածեցի, զաւանդեալ գլուխդ ոք յալագին դիմօք ըմբռնեցի, եւ նստեալ աթոռդ կազմեցի եւ զոտիկդ անուշ համբուրեցի, եւ կենդանութիւնդ նկարեցի հանդերձ զգեստիւքդ զաղաչարեցի, պատկեր սրբոյ Աստուածածնի եւ ձայն սրբոյ Ամլորդի, անդերձ տէրունական խաչի, զքեզ պահապան կանգնեցուցի, բազում աշակերտքդ նման հոգետանն կանգնեցուցի, զԴաւթայ որդածին զանձն նոցա բաշխեցի... կանթեղք վառեցի, թիւն Հայոց Ղաս եւ Ճէիւ Ըռա առ եւս զԴան կցորդ սոցա արի: Նա եւս աղերս իմ ընդ ձեզ որ տեարք իմ եւ թէ ոք հանդիպի զտապան ... զտէրունական յաղօթսն յիշեսջիք եւ ձեզ ի հողոյ զոյացեալ ...» «օծեալ է»:

**Դաւիթ Արք. Երեւանցի** (1746-1776).— Կը յաջորդէ Աւետիք Եպ.ի որուն աշակերտած և աշխատակցած էր։ «Ճգնազգեաց Վարդապետ» տիտղոսուած և «Հայր Դաւիթ» մականուանեալ այս եկեղեցականը 30 տարիներ պաշտօնավարած է մեծ գործունէութեամբ, սակայն առանց շատ խաղաղութեան կաթոլիկ խմորումին պատճառով։

Սեբաստիա Ս. Նշան վանքը պահուած ձեռագիր Շարականի մը մէջ կարդացուած սա տողերը (Թորգոմ Արքեպ. Գուշակեան, Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Ս. Նշանի վանուց ի Սեբաստիա, ՀԱ., 1927, էջ 309) հաւանօրէն կապ ունին այդ յուզումներուն հետ։

«Կեսարիայու առաջնորդ Դաւիթ վարդապետին վէքիլ նոյն յերկրացի Յարութիւն վարդապետս(1) եկի հրամանաւ Սուլթան Մուստաֆայի(2), հրամանաւ Կոստանդնուպոլսոյ պատրիարգ Յակոբ վարդապետին(3), ազատեալ եղաք սուտ բանիւ, հաւատացուցին պատրիարգն, արեանարբու ժողովուրդքն, գլխաւորքն, ոչ է պարտ յիշել. Տէր առնիցէ վրէժն մեր. թվին ՌՄԺԲ.ին (=1763). երես անկեալ աղաչեմք դիպօղիդ սորա յիշեցէք միով հայր մեղայիւ կամ լուսաւորեսցէ Տէր հոգիս սոցա ասացէք»:

Իսկ Նալեանի յաջորդին՝ Պասմաճեան Գրիգոր պատրիարքի ատեն (1764-1773) ինքն է որ մեղադրուած է օրուան պատրիարքէն, կրօնական համոզումներուն համար։ Պասմաճեան պատրիարք որ կաթոլիկ հակումներ ունէր և ի վերջոյ ինկաւ Հռոմի ծոցը, իր Յիշատակարանին մէջ սա տողերը գրած է իր մասին, որ բաւական յատկանշական է.

«Ոչ որպէս դիտէն Կեսարիոյ քաղաքին, Մայինքն Դաւիթ եպիսկոպոսին, որ մեծաւ հաւատով եւ ջերմեռանդն սրտիւ ուտէր զմիս մատաղին եւ զկնի ուտելոյն իվերայ մնացեալ ոսկերաց նորին զկարգ թաղման մեռելոց կատարեալ եւ յետոյ ամփոփէր ի մէջ եւ ի ներքոյ հողոյ»:

Ինչպէս Սիմէոն Երեւանցի կաթողիկոսի (1763-1780) 1777ին գրած մէկ գրութենէն կը հասկցուի իր շուրջը վէճեր պակաս չեն եղած։

«Այս քանի ամ է՝ որ այս Կեսարիոյ երկիրդ զանգատանօք լցին զականջս մեր եւ զպատրիարքին՝ զայդ Դաւթէ» (Դիւան Հայոց Պատմութեան, ԺԱ. հատոր, էջ 34) կ'ըսէ Սիմէոն կաթողիկոս, և կը յարէ թէ «ապա մեք ահա տարին անցանի, որ զՄատթէոս վարդապետն առաջնորդ եմք արարեալ դոցա ըստ իւրեանց խնդրոյն՝ եւ մեր հոգեւոր հրամանաւ, եւ պատրիարքն եւս արքունի ֆարման է յղեալ դմա:» (Նոյն)։

Անկէ որոշ կ'երեւայ թէ նոյնիսկ Կեսարացիք խնդրամատոյց եղած են և Սիմէոն Կաթողիկոս զայն պաշտօնէ դադրեցուցած է և

(1) Հաւանօրէն այս Յարութիւն վարդապետին կը պատկանէր այն կնդակը որ Բաբգէն վրդ. (հիմա կաթողիկոս) տեսած է Պրուսայի մէջ։ Այդ կնդակով Կեսարիոյ առաջնորդ Դաւիթ եպ. 1761ին կը յայտարարէ թէ ծայրագոյն վարդապետութեան աստիճան տուած է Յարութիւն վրդ.ի մը։ Այս կնդակը կարեւոր է կ'ըսէ Տ. Բաբգէն վրդ. անոր համար որ կը գծէ վարդապետական գաւազանի յաջորդութիւն մը Հայոց Առաքեալներէն և Լուսաւորիչէն մինչև իրեն գաւազանը և իր նմաններէն տարբեր անուններ ունի։ (տես Արեւելեան Մամուլ, 1903, էջ 1120)։ Մեղք որ Տ. Բաբգէն կաթողիկոս չէ ընդօրինակած զայն և այսօր վերջնապէս կորսուած է։ Հաւանօրէն Յար. վրդ. Կեսարացի յետոյ Պրուսայի եպիսկոպոս (1782-1786†) եղած է։

(2) Սուլթան Մուսթաֆա Գ. (1757-1773)

(3) Յակոբ Նալեան 1741-1749 և 1752-1764 երկու անգամ պատրիարք Կ. Պոլսոյ։

Զաքարիա Փօքուզեան Կաղզուանցի պատրիարք (1773-1781) —որուն խստութիւնը և նախանձախնդրութիւնը Հայ եկեղեցւոյ կարգերուն և կանոններուն համար նշանաւոր եղած է— անոր յաջորդին Փերմանը ստացած է։ Դաւիթ Արքեպ.ի պաշտօնէ քաշուելէն տարի մը յետոյ (1777) Էջմիածնայ Նուիրակ Սահակ վրդ. Կեսարիա կու գայ ժողովարարութեան համար և փոխանակ ուղղակի իր գործով զբաղելու դատաստանի կ'ենթարկէ Կեսարացիքը «դուք զբազմամեայ ծերունին Դաւիթ վարդապետն ո՞րպէս հանիք յառաջնորդութենէ եւ զՄատթէոս վարդապետն առաջնորդ արարիք» ըսելով։ Ասիկա պատճառ կ'ըլլայ շփոթութեանց։ «Իշխանքն» կը ջանան համոզել Սահակ վարդապետը «չասել զայն. ասելով թէ՝ դու ջանա զքո գործդ արդիւնաւորութեամբ աւարտել» սակայն ասիկա կը շարունակէ «նախատանօք եւ յորդորմամբ» ըսել թէ «պարտիք զԴաւիթ վարդապետն բերել եւ նստուցանել ձեզ առաջնորդ» և երբ զինքը մտիկ չեն ըներ կ'առնէ կը քալէ։ Առաջնորդ Մատթէոս վրդ. «խորհրդով իշխանացն» անոր ետեւէն հրաւիրակներ կը ղրկէ և կը խնդրէ որ քաղաք դառնայ։ Սահակ վրդ. սակայն փոխանակ հրաժարելու իր գաղափարէն կը շարունակէ իր ըսածները կրկնել «զայրացմամբ եւ անիծանօք» և երբ խռովութիւնը կը մեծնայ կրկին կը թողու քաղաքը կ'երթայ 5 ժամ հեռուն գտնուող այն գիւղը ուր Դաւիթ եպ. կը գտնուէր։ Հոն երկուքն ալ կաթողիկոսին թուղթեր կը գրեն և «փայեկ»ով կը ղրկեն Էջմիածին։ Կեսարացիք իմանալով ասիկա, «զփայակն կալեալ էին եւ զթուղթս առեալ՝ բացեալ եւ ընթերցեալ եւ առ սրբազան վեհն իւրեանց ապա զբազմակնիք թուղթ գրեալ զանգատանօք, ծանուցանելով զամենայն եղեալսն եւ զդատաստան խնդրելով (1), (Դիւան Հայոց Պատմ., ԺԱ. հատ., էջ 30-31)։

Սիմէոն կաթողիկոս երբ Կեսարացւոց հանրագրութիւնը կ'ստանայ անմիջապէս նամակով մը ցաւ կը յայտնէ «ընդ այնպիսի վրդովումն նոցին, որ ներհակ է ասէ դիտման մերում» և սաստիկ կը պախարակէ Նուիրակը որ իր իրաւասութեան սահմանէն դուրս գործերու միջամտած է և կը դատապարտէ զայն «որպէս խելագար եւ մոլեգնեալ» (Նոյն, էջ 31)։ Սակայն միեւնոյն ժամանակ սաստիկ կը յանդիմանէ և կը խարանէ Կեսարացւոց ապաշնորհ ընթացքը, անոնց սուրհանդակին ձեռքէն նախկին Առաջնորդ Դաւիթ եպ.ի և Էջմիածնայ Նուիրակ Սահակ վրդ.ի գրած երկու թուղթերը առած և վար դրած ըլլալուն համար, այնպիսի տրամաբանութեամբ մը որ արդարեւ պատիւ կը բերէ հոգեւոր պետի մը և վարչական մարդու մը (տես Նոյն, էջ 32), և վերջապէս յորդորելով որ Նուիրակին օգնեն իր գործին համար կը վերջացնէ իր գիրը։

---

(1) Կեսարացիք միեւնոյն ատեն գանգատ կը գրեն Կ. Պոլսոյ Զաքարիա պատրիարքին, որ անոնց գանգատը կը հաղորդէ կաթողիկոսին։ Սիմէոն իր Նուիրակին դէմ Կ. Պոլսոյ պատրիարքին եղած գանգատէն զգացուած Կեսարացիները կը կոչէ «երկերես կեղծաւորք» գրելով պատրիարքին թէ «որպէս քեզ գրեալ են... մեզ եւս գրեալ յառաջ եւ որպէս առ քեզ կեղծաւորեալ զդատաստան խնդրեն, նոյնպէս եւ առ մեզ կեղծաւորաբար գրեն թէ՝ որովհետեւ սորա մեծաւորն դու ես, վասն այնորիկ քեզ գրեցաք, եւ պատրիարքին չգրեցաք: Ուրեմն զերկոսեանս եւս խաբեն» (Դիւան Հայոց Պատմ., ԺԱ. էջ 68)։



Այս առթիւ կաթողիկոսը կը գրէ նաև առաջնորդ Մատթէոս եպ.ին, ինչպէս նաև Նուիրակ Սահակ վրդ.ի։ Այս երկրորդին գրուածը չափազանց կծու յանդիմանական մըն է։ «Քեզ զի՞նչ փոյթ առաջնորդութեան, ո՞վ ոք եւ իցէ» կ'ըսէ։ Քեզ զի՞նչ փոյթ՝ որ դու զիմ եւ զպատրիարքի արարեալն ջրել կամիցիս, զժողովուրդն դաս քակիցես, կաղ Դաւիթն վերստին Առաջնորդացուցանել մտաբերիցիս եւ պատճառ լինիցիս խռովութեան տեղւոյդ, զլխացաւութեան մեզ, խայտառակութեան քեզ՝ եւ վնասատուութեան գործոյդ» (Նոյն, էջ 34)։

Այս նամակին մէջ յատկապէս ուշագրաւ է Սիմէոն կաթողիկոսի «կաղ Դաւիթ» բացատրութիւնը։

Ամէն անգամ որ Դաւիթ եպ.ի մասին կը խօսի զայն կը յիշէ անտիտղոս և նկատելի է որ այս անգամ կը գործածէ նաև այս «կաղ» մակդիրը։ որ չեմ կարծեր թէ անոր ֆիզիքական պակասութիւնը նշաւակելու համար տրուած ըլլայ այլ դատապարտելու անոր բարոյական կաղութիւնը, որ պատճառ եղած էր այնքան խռովութեանց։

Դաւիթ եպ. որ մեկուսացած էր Կեսարիայէն հինգ ժամ հեռու գիւղ մը (Դիւան Հայոց Պատմութեան ԺԱ, էջ 101) հաւանօրէն մինչև մահը հոն կը մնայ հակառակ իր յաջորդին զինքը հեռացնելու փորձին (տես նոյն, էջ 33) և ինչպէս սովորաբար կը պատահի Հայոց մէջ՝ «զնա մեռիր, եկուր սիրեմ»ի սկզբունքով, յետ մահու կը պատուուի իբր «ղեկավար ընտիր» և «հովուապետ արքուն» որ օգտակար եղած էր վանքին անոր կրթական և նիւթական բարգաւաճման աշխատելով, և կատարելով շինարարութիւններ, — ինչպէս կը թուէ իր տապանաքարը։ Կը թաղուի վանքին մէջ, Աւետիք եպ.ի գերեզմանին քով, հետեւեալ արձանագրութեամբ.

«Սրբազան Դաւիթ Արքեպիսկոպոս.

Սարգիս վրդ., Յովհ. վրդ. Պետրոս վրդ. Էվքէրէցի, Գրիգոր վրդ., Յարութիւն վրդ., երկրորդ Գրիգոր վրդ., Յարութիւն վրդ., Կարապետ վրդ., Կարապետ վրդ., Պետրոս վրդ., Մատթէոս վրդ., ՌՄԻԷ:

Յէսեան որդւոյ ո՞ հոգեխօս քնար՝ զովիչ վեհազանց,
Եկ աստ դրուատել՝ քում անուանակցի՝ ներբող գերազանց,
Ղեկավար ընտիր՝ հովուապետ արքուն՝ որ աստ Հայկազանց,
Ի պարս դիտաց՝ Սրբազան Դաւթի, պետի միանձանց,
Յեռեալ Պսակ մեզ՝ մեծ Երեւանայ՝ լուսափիւռ ականց,
Դա զվեհավայրս՝ ելից բարութեամբ՝ մեծագործ արդեանց,
Իբր ձիթենւոյ՝ որհնաբեր ընձիւղս՝ սուրբ հարց մետասանց,
Տածեալ ընդ թեւօք՝ խմբէ եւ զծաղկունս՝ միաբան մանկանց
Է եւ միակ պատճառ՝ քառավազ աղբերց՝ ջրոցն հոսմանց,
Նման եդեմայ՝ պճնէ զայգեստանս՝ ի տեսիլ ազանց.
Որոյ է շքեղ՝ փոքր սեղանատն՝ կերտուած ի հիմանց.
Իիսեալ ընդ նմին՝ շէնս շրջակայս եւ զպարախ զառանց
Ի կատար գործոց՝ ապա հրաւէր՝ հասեալ ի բարձանց.
Բամից զուարթնոց՝ սրբասնեալ հոգին ոլացեալ էանց,
Ի պահ թողեալ աստ՝ մաքրափայլ մարմինն՝ որհնեալ սուրբ հարանց:

Իր ժամանակը և շինարարութիւնը կը մատնանշէր նաև Ս. Կարապետի վանքին մէջ գերեզմանի մատուռը գտնուած խաչքար մը որ ունէր սա արձանագրութիւնը։

«Զիշատակ է սբ. Խաչս զԱկնցի մհտի Մինասին եւ կողակցոյն զՓարվա-

զին մի Սեղբոսին կողակցոյն՝ մի Մերկերիոս զկողակցոյն եւ որդւոյն Նիկողոսին, Մարիամին, Անտոնին, Կատարինէ Յովհաննէսին. թվ. ՌՄԲ (= 1753) Ապրիլի Ա.ի ժամանակս իբրու դէտ Դաւիթ լոկ աբեղայէ ձեռամբ եղեւ ծրեալ» (*տես* Հայ վանօրայք, Ա. էջ 18)(1):

**Մատթէոս եպ. Գարամանեան կամ Յովհաննէսեան Թալասցի** (1776-1798†),— *Միաբան Ս. Կարապետի և գործակից Դաւիթ եպ.ի որուն պաշտօնավարութեան շրջանին, 1774 Յունիս 1ին Սիմէոն կաթողիկոսէն եպիսկոպոս կը ձեռնադրուի,* «... ի միաբանութիւն եւ ի սպասաւորութիւն սրբոյ Դանիէլի վանից» (*տես* Դիւան Հայոց Պատմութեան, *Գիրք ԺԱ. էջ* 459)։

*Անկէ կը հասկցուի թէ տակաւին միաբան եպիսկոպոս ձեռնադրըուած է և Ս. Դանիէլի վանահայր եղած է, սակայն հազիւ երկու տարի պաշտօն վարած է, վասնզի 1776ին Դաւիթ եպ. Երեւանցիի յաջորդած է Զաքարիա պատրիարք Կաղզուանցիի և Սիմէոն կաթողիկոսի համահաճութեամբ, ինչպէս տեսնուեցաւ։*

*Իր պաշտօնավարութեան սկիզբը դժուարութեանց հանդիպած է Նախկին առաջնորդին՝ Դաւիթ եպ.ի կողմէ որ վերստին առաջնորդութիւնը ձեռք բերել կը ջանայ, Էջմիածնայ նուիրակ Սահակ վրդ.ի գործակցութեամբ։ Այս առթիւ նշանակելի է որ Սիմէոն կաթողիկոս մեղադրանքի խօսքեր կ'ըսէ Մատթէոս եպ.ին, ըսելով որ* «Քեզ պարտ էր խոհեմութեամբ քով եւ ստոյգ հարազատութեամբ որ առ մեզ՝ կերպիւ ինչ գտանել զհնարն խաղաղութեան, որ այդքան չմեծանայր բանն: Զի եթէ նուիրակն մեր ըստ գրեցելոց ձեռոց այդպէս խելագարութիւն է արարեալ, յիրաւի դատապարտելի է, բայց եւ դու ոչ ես անպարտ 'ի սպառ, որ զայդ ոչինչ եւ տղայական առարկութիւնդ չհերքելով ի բաց, առաւել մեծացուցեալ ես, եւ մեզ ցաւ ծանուցեալ:" Զայդ զոր յայդ վայր հասուցեր, զի՞նչ մտածեցեր զվախճանն, իբր թէ զգործ սրբոյ Աթոռոյս խափանեալ, զնուիրակն արգիլել ի գործոյն, զմեզ ծիծաղելի առնել թշնամեաց, եւ քեզ փառս ստանալ, թէ Էջմիածնի նուիրակին ես այսպէս արարի: Ի հարկ է այսք էին ծնունդք այդ առաջադրութեանդ» (Դիւան Հայոց Պատմութեան, ԺԱ. էջ 33):

*Սիմէոն կաթողիկոս որ կը յայտնէր թէ այս տողերը գրած էր* «ի սիրոյ հարկեցեալ» «ջանա», *կ'ըսէր*, զմիջոցդ շինել եւ անհետ առնել զայդ ձայն» *և կը յանձնարարէր նուիրակին ուղղուած ներփակ նամակը իրեն տալ և* «զթուղթ հասարակին(1) ծանուցմամբ ընթեռնուլ տալ, յորդորել զամենեսեան ի սէր, զնուիրակն պատուով ի քաղաքն ածել, ընդ ժողովրդեան կատարելապէս հաշտեցուցանել, օժանդակել գործոյն, զամենեսեան յառաջ տուրս յորդորել, եւ լիալիր արդեամբք այսր ուղեւորել: Ահա ի քէն իմանալոց իմ զայս ասէ» (Դիւան, ԺԱ. էջ 33): *Նոյնպէս այս նամակէն կը յայտնուի թէ Մատթէոս եպ. կը ջանար հեռացնել Դաւիթ եպ.ը,* «Դաւիթ վարդապետն կամէր ելանել անտի եւ գնալ յայլուր: Վասն որոյ՝ թախանձեալ էր զՄատթէոս վարդապետն ինքեամբ եւ այլով, հրաման խնդրել վասն իւր ի սրբազան վեհէն, զի ուր եւ կամիցի՝ գնասցէ: Իսկ նա առ ի զերծանիլ ի նմանէ՝ գրեալ էր Երեմիա վարդապետն ասել սրբազան վեհին, զի գրեսցէ ինքեան, դու որ Դաւիթ վարդապետին աղագաւ իրիջայ գրես մեզ հրաման տալ՝ զի գնասցէ ուր եւ կամիցի, քեզ ի՞նչ փոյթ է՝ որ դու զայդ իրիջայդ վասն Դաւիթ վարդապետին մեզ գրիցես, զի այդ գործ իշխանաց եւ ժողովրդոց է, եթէ նոքա կամին, թող նոքա գրեսցին հասարակութեամբ առ մեզ, դու ընդէ՞ր գրես զայդ: Ուրեմն՝ դու քո գործոյդ եւ առաջնորդութեանդ լեր հոգացող, եւ յայդպիսի բանից որք ոչ են գործ քո հեռի եւ ի բաց լեր, եւ զայդպիսի քեզ անյարմար բանս մեզ այլ մի եւս գրեսցես» (Դիւան, *ԺԱ. էջ* 33)։

*Այս յանդիմանութեան գիրին Կեսարիա ժամանելէն յետոյ՝* «Առաջնորդ Մատթէոս վարդապետն յղեալ զքահանայս եւ զիշխանս, ածեալ էր զնուիրակն ի քաղաքն, եւ հաշտեալ էին ընդ միմեանս» (Դիւան. ԺԱ. էջ 100):

*Մատթէոս եպ. այս պարագան կը հաղորդէ Մայր-Աթոռ Երեմիա վարդապետին, փոխանակ ուղղակի կաթողիկոսին գրելու* «որովհետեւ սրբազան վեհն փոքր ինչ նեղացեալ է ի վերայ մեր, վասն որոյ՝ ամօթ վարկայ գրել ինքեան»:

*Սիմէոն կաթողիկոս կը յանձնարարէ Երեմիա վրդ.ին նամակով մը իմացնել Մատթէոս եպ.ի որ* «Սրբազան վեհն Գ. պատճառաւ ի քէն վիրաւորեալ է, մին այս՝ զի դու գրեալ էիր թէ՝ ժողովուրդքն կամեցան պատրիարքին եւս գանգատ գրել զնուիրակէն, ես ոչ թողի իսկ այժմ գրէ պատրիարքն սրբազան վեհին, թէ այսպէս գանգատ էին գրեալ ի Կեսարիոյ առ իս՝ մինչեւ ցԴՃ (400) կնքով: Եթէ ժողովուրդքն զպատիւ սրբոյ աթոռոյս սրբազան վեհին չկամեցան պահել, դու ընդէ՞ր ոչ պահեցեր, այլ թոյլ ետուր նոցա, եւ սրբազան վեհին այսպէս գրես թէ՝ ես ոչ թողի զի գրեսցեն: Երկրորդ՝ զի ուխտաւորք էին եկեալ ասէ, յորոց հարցաք զորպիսութիւնս: Որք ի ժամ ձերոյ վիճոյն յայտ գոլով՝ վերահասու էին լեալ. որք ասացին թէ՝ նուիրակն մինչ եկն ի քաղաքն, ըստ արժանւոյն ոչ մեծարեցին, վասն այն եւ նա խռովեալ՝ ել ի քաղաքէն ի գիւղ մի ուր եւ հին առաջնորդ Դաւիթ վարդապետն կայր, որ Ե. ժամու հեռի է ի քաղաքէն, եւ առ այն վերստորեցան ի նմանէ իշխանքն: Ահա սակս այսր եւս ի քէն վիրաւորի: ասէ սրբազան վեհն, թէ ընդէ՞ր ի սկզբանն անպատիւ

(1) *Տրդատ եպ. Պալեան* (Հայ վանօրայք, *էջ* 51) *կ'ըսէ թէ Դաւիթի «օրովը կը յիշուի Յովնան անուն վարդապետ մը որ կ'երեւի թէ փոխանորդութեան պաշտօն վարած է»։ Այս տողերուն շարժառիթը եղած է ցարդ անտիպ յիշատակարան մը որ Տրդատ եպ. Պալեան գտած է* 1768*ին գրուած «Ժողովածու գիրք»ի մը* (*թ.* 39 *թուագրեալ*) *մէջ։ Ահա այդ յիշատակարանը։*

«Արդ այս նոր գրեցաւ ՌՄԺԷ (=1768) ամի մերազնեայ տումարի ի Սբ. շնորհատու վանքս Սրբոյ Կարապետի ՏՆ. իմոյ շնորհազեղ շիրմի ի յառաջնորդութ. սորին բանի սպասաւոր Յովնան վրդ.ի, որ ի սոյն ամուրս հալածական... գոլով ի Կոստանդնուպոլիս. սպ. եւ նուաստս յամենայնից Կարապետ արքեպ. դիտողիս Ցամբայ նահանգին վս. ճեմարանութեան անեղի կրօնիս լուսաւորչազնէ վկայու ե. հալածեալ ի հերետիկոսամիտ երկաբնակ Լութերականաց դիմեցի եւ խնդրակատարս այս... ի վերջ բանիս խնդրեմ յիշել... Մելքիսեդեկ ծերունամեծար արքեպն, Ս. Յովհաննու հրաշազեղ վանքիս յորմէ խնդրեցաք զօրհնակն...ամէն»:

*Սակայն Տրդատ եպ. Պալեան շփոթութեան մը մէջ ինկած է։ Յովնան վրդ. Առաջնորդ Ս. Կարապետի, Կեսարիոյ հետ կապ չունի, այլ Յովնան վրդ. Ամթեցին է որ* 1763-1767 *առաջնորդ էր Մուշի Ս. Կարապետի և* 1767*ին Կ. Պոլիս էր վանքին պարտքերուն համար։ Իսկ Կարապետ արքեպ. Ամթայ, Պօյաճի օղլու, կաթոլիկամիտ եկեղեցական մըն էր որ շուտով վանուեցաւ Ամիթէն։*

(1) *Այսինքն Կեսարացւոց ուղղուած թուղթը որ վերը ներկայացուցի։*

տարրիք զնուիրակն, որ այդպէս լինէր: Երրորդ՝ զի ընծայ էր յղեալ նա արքազան վեհին... յորում էր Ա. հին ժամացոյց ոսկեայ: Ուստի գրել ես թէ՝ յանբաւ բուրաստանաց զազնիւ ծաղկունս առնուն մարդիկ եւ ընծայեն ումէք. իսկ դու մինչ առաջնորդ եղեալ մեր ի բանաւոր բուրաստանդ՝ զքառամեայ ծաղիկ ընծայես արքազան վեհին: Առ որ վիրաւորեալ՝ յետս յղել կամի» (*Նոյն*)։

*Մատթէոս եպ. այս յանդիմանութենէն յետոյ կը գրէ կաթողիկոսին 2 Ապրիլ 1777ին Նուիրակ Սահակ կաթողիկոսին հետ հաշտուիլը և* «ձեռնամխին նորին ի գործն» (Դիւան, *ԺԱ. էջ* 143) *և այսպէս միջադէպին փակուիլը։*

*Այս առթիւ Սիմէոն կաթողիկոս իր նուիրակին կը յղէ քաջալերական նամակ մը (Նոյն) և ինչպէս աւելի վերջ կատարուած թղթակցութենէ մը կը հասկցուի Սահակ վրդ. իր ժողովարարութիւնը կը շարունակէ և քիչ վերջը արդէն Դաւիթ եպ.ի մահը վրայ հասնելով Մատթէոս եպ. Գարամանեան անարգել կը շարունակէ իր պաշտօնը և կ'ունենայ արդիւնաւոր պաշտօնավարութիւն մը։ Իր աշխատութեամբ և ջանքերով կը շինուի ի հիմանէ, վանքին եկեղեցին որ յանուն Ս. Հրեշտակապետին է։ Կը կատարէ նաև այլ և այլ շինութիւններ, իրեն միշտ գործակից ունենալով Մունճուսունցի Ստեփան վրդ.ը։*

*Ինչպէս կը տեսնուի Մատթէոս եպ. Գարամանեան, կարգաւորող և բարենորոգող եկեղեցական մը եղած է, և վանքը ճոխացնելու աշխատած, թէ՛ ի հոգևորս և թէ՛ ի մարմնաւորս։*

*Իր ջանքերով վանքին սպասները ինչպէս նաև նուիրական մասունքները ճոխացած են։ Խաչի մը վրայ կը կարդացուէր.*

«Օծեալ խաչիս միջի Սբ. Նշանն, մասունքն է Մծբնայ Յակոբ Սբ. Հայրապետին, ի ժամանակս Տն. Մատթէոսի Կեսարու արքեպիսկոպոսին, Փառակեցի Տ. Իսահակ եպիսկոպոսն(1) յիշատակ ես հրաշալի վանքին Ս. Կարապետի, ողորմեսցի Տէր ծնողացն Յակոբին եւ Թամամին. թվին. ՌՄԽԱ. (=1792) եւ Օգոստ. 3 օրն» (*տես* Հայ վանօրայք, էջ 30):

*Մատթէոս Արքեպ. Գարամանեան Ս. Կարապետի վանքին մէջ փոքրիկ վարժարան մըն ալ բացած է դպիրներու և ժառանգաւորաց յատուկ և հաւաքած է* 8–10 *աշակերտներ։ Գրագրութեան և ուսուցչութեան պաշտօնները կը կատարեն Կարապետ, Մանուէլ և Զաքարիա*(2) *վարդապետները։*

*Մատթէոս եպ. Գարամանեան միաբանութեան անդամներէն Ստեփան և Կարապետ վարդապետները* 1798*ին կը ղրկէ Էջմիածին եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստանալու համար*(3)։

---

(1) *Իսահակ եպ. Փառակեցի* 1774 *Հոկտ.* 19*ին եպիսկոպոս ձեռնադրուած է Սիմէոն Երեւանցի կաթողիկոսէն* (1763–1780) *և Կարնոյ նուիրակ եղած է պահ մը։ Հաւանօրէն Մատթէոս Արքեպ. Գարամանեան Էջմիածին գտնուած պահուն իր եպիսկոպոսացման առթիւ, ծանօթացած և այս մասունքը նուէր ստացած է։*

(2) *Զաքարիա վրդ. Կէմէրէկցի Ս. Կարապետի լուսարար ալ եղած է* (*Տաշեան*, Մայր Ցուցակ, 644)։

(3) *Տրդատ եպ.* (Հայ վանօրայք, *էջ* 53–54) *կը կարծէ թէ Մատթէոս Արքեպ. իր հետ Էջմիածին տարած է Ստեփան վրդ.ը որ իրեն օծակիցը եղած է։ Սակայն սխալ է վասնզի Մատթէոս* 1774 *Յունիս* 1*ին*, 24 *տարի առաջ ձեռնադրուած է, մինչ Ստեփան՝* 1798*ին։ Եթէ այսպէս չըլլար* 1800*ին էջմիածնայ միաբանները իրենց հանրագրութեան մէջ զայն պիտի չկոչէին «Նորապսակ»* (Դիւան. Ա. էջ 51)։



*Անոնք տակաւին կեսարիա չդարձած ինքն կը մեռնի, կտակ ընելով որ Ստեփան եպ. Կեսարիոյ առաջնորդ ըլլայ և Ս. Կարապետի վանքը նստի և Կարապետ եպ.ի յանձնուի Ս. Դանիէլի վանքը, անոր տալով Մունճուսուն, Կէրմիր, Պէլէկէսի գիւղերը։*

*Մատթէոս եպ. Գարամանեան կը թաղուի եկեղեցւոյ ներքին գաւիթին մէջ։ Իր տապանաքարն է.*

«Եղեալնդ ի յայսմ շիրմիս
Մատթէոսի արհի պետիս
Նոր ի նորոյ սուրբ տաճարիս
Ի հիմանէ կառուցողիս
Որք հանդիպիք սոյնոյ տառիս
Մի հայր մերիւ տուք ողորմիս
Հանգչիլ հանգիստն յաւիտենիս
Լուսեղինաց սրբոց գնդիս
Թուին ՌՄԽԷ.ին»

*Մատթէոս եպ. կ'երեւայ թէ իր կտակով Էջմիածնայ թողած է բան մը վասնզի* 1799*ին, իր յաջորդին Ղուկաս կաթողիկոս Կարնեցին նամակ մը գրելով շնորհակալութիւն կը յայտնէ* «վասն յուղարկելոյն զկտակն հանգ. առաջնորդ Մատթէոս վարդապետին, հանդերձ յինքեանց եւս աջահամբուրիւ» (Դիւան Հայոց Պատմ. *Դ. հտ. էջ* 677)։

*Մատթէոս եպ. Գարամանեան միշտ օրհնութեամբ յիշուած է վանքին մէջ ուր Պատարագին գոհութեան ատեն կը յիշատակուէին ինքն և իր յաջորդը Ստեփան եպ. իբր* «շինողաց Ս. եկեղեցւոյս» *և* «որք ընդհովանեաւ սորին են հանգուցեալ»:

**Ստեփան եպ. Օճլազան Մունճուսունցի** (1798–1825 *Նոյեմ.* 1†).—

*Համաձայն կտակին Մատթէոս Արքեպ.ի որուն արդէն գործակիցն էր և փոխանորդը (վէքիլ) կը յաջորդէ անոր։ Պաշտօնավարած է* 27 *տարիներ գնահատելի գործունէութեամբ։ Կը շարունակէ և կը լրացնէ վանքին վերաշինութիւնը։ Այս առթիւ Ս. Հրեշտակապետ տաճարին հարաւային կամարին վրայ զետեղուած էր սա յիշատակարանը.*

«Նորոգութիւն այս դրուագի: Լիցի յայտնի հարցանողի: Յամի հազար երկարիւրի: Վաթսուն եւ եօթ վերաբարդի (=1818): Շնորհիւ Տն. Ստեփաննոսի: Գերահամբաւ վերատեսչի: Աստուածարեալ արհիպետի: Ի հիմանէ աշխատողի»:

*Նոյնպէս իր շինարարութեան յայտարար կը մնայ վանքին Առաջնորդարանին ջրհորին սա արձանագրութիւնը.*

«Յիշատակ է ջրհորս այս Կեսարացի մհի Խըտրին, եւ իւր որդւոյն Յակոբին եւ Աբրահամին, եւ վասն համայն կենդանեացն խաղաղ կեցութեամբ, եւ ամենայն ննջեցելոցն յարքայութիւն հանգստեան, ի վայելումն հոգեւոր պաշտօնէից սրբոյ հրաշալի ուխտիս, եւ ամենայն Երթեւեկացն, յաւուր վերատեսչութեան Տեառն Ստեփաննոսի արքեպիսկոպոսին, եւ թուին Հայոց ՌՄԾԵ (1806), ի վայելչութիւն սրբոց վանուցս»:

*Ստեփաննոս եպ. ունեցած է փառքը կաթողիկոսութեան ընտրելի հռչակուելու, երբ տակաւին երկու տարուան եպիսկոպոս էր։* 1800 *Մարտ* 28*ին երբ էջմիածնայ միաբաններու խնդրանքին համաձայն Կ. Պոլսոյ Ամիրաները Պատրիարքին նախագահութեամբ գումարուած էին Նէնի Խանի մէջ Ղուկաս կաթ.ի յաջորդ մը ընտրելու*

համար, մանաւանդ Դաւիթ եպ. Էնէգէթցի Ներկայացուց միաբանութեան ընտրելիները որոնցմէ մէկն էր նաև Կեսարիոյ առաջնորդը որ իբր ամէնէն յարմարագոյնը կը նկատէին, էջմիածնայ 20 միաբանները ըսելով որ «եթէ ի մէջ մահզարիցն մեր գրեցեալ սրբազան եպիսկոպոսունքն զանազան պատճառօք ի յարգութենէ ձերմէ անպատեհ դատեցին անուանակոչիլ, գոնէ զնորապսակ Ստեփաննոս արքեպիսկոպոսն Կեսարիոյ՝ բարեհաճեալ առաքեսջիք գալ ի սուրբ Աթոռս, որ ամենայն յօժարութեամբ եւ սիրով վերապահեսցուք զնա տէր եւ հայր ըստ սառասի առաջին սրբազան հայրապետացն....» (Դիւան Հայոց Պատմ. Ա. էջ 51)։

Ասկէ զատ ժողովին Ներկայացուեցաւ 12 եպիսկոպոսներու ալ մէկ գիրը, ուր մասնաւոր կերպով կը խնդրուէր «շնորհապետն Ստեփաննոս արքեպիսկոպոսն ... առաքել» (Նոյն, 52)։ Եւ ինչպէս ժամանակագիրը կ'արձանագրէ «Ի լսել զայս ամենայն ժողովոյ իշխանացն եւ պատրիարքին, հաճեցան առանց իմիք տարաձայնութեան (իմա՝ միաձայնութեամբ) թողուլ զընտրութիւն զյաջորդութիւն ի վերայ յիշեալ Ստեփաննոս եպիսկոպոսին եւ լինել ինքեանց կատարողք հրամանի տէրութեան: Բայց անդէն զտանելով ոմանք յիշխանաւորացն կողմնական եւ ազգական եպիսկոպոսին Կեսարիոյ, բաց կշռելով զզօրութիւն Ցովսէփայ(1) Արքեպիսկոպոսին՝ յառաջարկեալ զանազան պատճառս հիւանդութեան անձնական ցաւոց, արգել եղեն այնմ, ուստի ի նոյն օր առանց ինչ որոշելոյ արձակեցաւ ժողովն...» (Դիւան Հայ. Պատմ. Ա. էջ 52)։

Ուրիշ վաւերագիր մը Կեսարիոյ առաջնորդին ընտրութեան ընդդիմացան կ'ըսէ Կեսարացիները (Կռունկ Հայոց աշխարհի, 1863. էջ 753)։ Ամէն պարագայի մէջ իր ընտրութիւնը վիժեցաւ, սակայն իր կարողութեան համար միշտ յարգանքի առարկայ եղաւ։ Ասոր ապացոյցը կը գտնենք 1802 Յունիսին Դաւիթ Էնէքէթցի կաթողիկոսին կողմէ իրեն ուղղուած թուղթի մը մէջ (տես Դիւան Հայ. Պատմ. Գ. էջ 455–458) ուր իրեն տրուած է «վայելչապատիւ առաջնորդ», «գերզօն վարդապետ»և «շնորհապետն արհիեպիսկոպոս» տիտղոսները։ Այս թուղթին մէջ Դաւիթ կաթողիկոս կ'ըսէ թէ «կամիմք միշտ ի պատուի ունել զքեզ զի ի տեղի հոգելոյս հօր քոյ Մատթէոսի հոգիազարդ արքեպիսկոպոսի ճանաչեմք զսիրելութիւնդ, եւ մեծայոյս եմք՝ թէ որպէս յուսահոգին այն՝ հարազատ եւ հաւատարիմ էր յոյժ առ սուրբ Աթոռս եւ առ գահակալսն սորին... նոյնպէս եւ դու հոգեծնունդ որդիդ նորա՝ հարազատ եւ օգտախոհ լիցիս առ սուրբ գահս եւ առ մեզ» (Նոյն, էջ 457)։ Եւ կը բացատրէ այն աղէտները որոնց ենթարկուած է էջմիածին և կը յորդորէ զայն կապուած մնալ Մայր-Աթոռին ըսելով որ «շնորհիւն Աստուծոյ ընտիր եւ խոհական անձն ես, եւ երեւելի ի կողմունդ եւ ըստ վերնածիր խոհեմութեան քոյ՝ կարես իմանալ՝ թէ յերկպառակութենէ աստի որ ծագեալն է, զինչ ունի յառաջագայիլ...» (Նոյն, էջ 458)։

Հակառակ իր վայելած մեծ համբաւին սակայն իր պաշտօնավարութիւնը զերծ չմնաց փոթորիկներէ, թէ՛ ներքին և թէ՛ արտաքին։ 1820–21ին Կեսարիոյ Հայ ժողովուրդը մեծ տառապանքի ենթարկուեցաւ «յերեսանց հարկապահանջութեան եւ ի սաստիկ սովու՝ յորմէ մեռանէին բազումք» (Աստուածատուր եպ. Տ. Յովհաննէսեանց, Ժամանակագրական Պատմ. Երուսաղէմի, Բ. հտ. էջ 372)։ Կեսարիոյ փաշան Ս. Կարապետի մէջ Ստեփան եպ.ի փոխանորդութիւնը ընող Աւետիս եպ. Մունճուսունցիի դէմ «ցասուցեալ... կամէր կործանել զնոր շինուածս վանուց եւ

(1) Արղութեան



գլխաւորք ազգին մոռացեալ զնեղութիւնս իւրեանց, ետուն նմա 25.000 դահեկան տուգանս եւ զերծան ի ձեռաց նորա» (Պատմ. Երուսաղէմի, Բ. 372)։

Այս արտաքին տագնապներու հետ ներքին փոթորիկ մըն ալ պայթեցաւ և այն Կեսարացիք որ իրմէ բաժնուիլ չէին ուզած և չէին թողած կաթողիկոս ընտրուելու, իրեն հետ վէճի ու կռիւի բռնուեցան և զինքը հեռացնել ուզեցին քահանայական ձեռնադրութեան մը պատճառով ծագած երկպառակութեան մը հետեւանօք։

Ֆրէնկեանք՝ որ ազդեցիկ ընտանիք մըն էին առաջնորդին ընդդիմադիրներուն կը միանան և կ'ուզեն զայն հեռացնել և իր տեղը առաջնորդ ընել Ս. Դանիէլի վանահայր-առաջնորդ Տէտէմականուանեալ Կարապետ եպ.ը սակայն չեն յաջողիր, վասնզի Մանիկեան և Կիւմշեան ընտանիքները՝ զայն կը պաշտպանեն։ Սակայն պառակտումը այնքան կը մեծնայ որ միջոց մը, վանքը և քաղաքը իրարմէ կ'անջատուին և Կ. Պոլսոյ Պատրիարքարանը իբր Պատր. Փոխանորդ Կեսարիա կը ղրկէ **Ղուկաս վրդ. Նէրմիրցին** (1821–1823) որ քաղաքը կը մնայ։

Ստեփան եպ. իր պաշտօնը կը շարունակէ միայն վանքին մէջ, մինչև որ կրկին երկու պաշտօնները կը միանան իր վրայ։

Ստեփան եպ.ի պաշտօնավարութեան շրջանին է որ Յարութիւն Ամիրա Պէզճեան, ուխտի կու գայ Ս. Կարապետի վանքը և կարեւոր նուիրատուութիւններ կ'ընէ, նոյնպէս իր օրով է որ Տիւզեան երեք եղբայրները, Կարապետ, Յակոբ և Պօղոս, Ս. Կարապետի վանքը աքսոր կը ղրկուին Սուլթան Մահմուտի հրամանով՝ 1820 Մարտ 2ին և երեք տարի հոն կը մնան։ Ստեփան եպ. անոնց նկատմամբ ամէն հոգածութիւն ցոյց կու տայ։

Յարութիւն Ամիրա Պէզճեան երբ կը յաջողի հնարիմացութեամբ մը ներում ձեռք բերել, և անոնք 1823 Մարտ 18ին կը մեկնին Կեսարիայէն և կը դառնան Կ. Պոլիս (15 Ապրիլ 1823), միշտ վերյիշումով իրենց հոն անցուցած օրերուն, չեն մոռնար վանքը և ձեռնտու կ'ըլլան անոր յիշատակներով և նուէրներով։ Նոյնպէս Ստեփան եպ.ի յարգանք ընծայելու համար 1823ին զայն կը հրաւիրեն Կ. Պոլիս և կը հիւրընկալեն երեք ամիսներ իրենց ապարանքին մէջ։

Ստեփան եպս. իր օրագրին մէջ կը պատմէ թէ. «Գիշեր մը սենեակիս մէջ պառկած էի, դուռը բացուեցաւ, մէկը մտաւ սենեակս, վրայէս վերմակս վերցուց, հասակս, թեւերս, գլուխս չափեց, դարձեալ գոցեց և գնաց. գիշերուան այս անցքի մասին տնեցիներուն բան մըն ալ չըսի»։ Մեկնումի օրը՝ Տիւզեաններու երէցը նաւ ողջերթի գալով, «Սրբազան, կ'ըսէ, մեր տունէն 3 սնտուկ շաքարեղէն ղրկած են, հաճեցէք ընդունիլ»։ Քիչ յետոյ, միւս երկու եղբայրներն ալ կու գան և կը խնդրեն որ Ս. Կարապետի գերեզմանը բանան սնտուկները։

Ստեփան եպ. 20 միաբան վարդապետներու ներկայութեանը զանոնք կը բանայ և անոնց մէջ կը գտնէ եպիսկոպոսական պատարագի զգեստեղէն, համակ ոսկեթել, թանկագին քարերով պճնուած, չաթալ թագ մը՝ խոշոր յակինթ, ադամանդ և զմրուխտներով զարդարուն, շատ թանկագին հնութիւն՝ անգնահատելի արժէքով, նաև եպիսկոպոսական թանկագին մատանի մը՝ որ քանի մը հազար ոսկեդրամ գնահատուած է, ոսկիէ քթատուփ մը և ուրիշ թանկագին իրեղէն-

ներ (տես Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան, Ընդ. Օրացոյց, 1928, 238)։
Ստեփան եպ. վախճանած է 1824 Նոյեմ. 1ին, և թաղուած նոյնպէս եկեղեցւոյ ներքին գաւթին մէջ Մատթէոս եպ.ի գերեզմանին քովը։ Տապանաքարին վրայ գրուածքն էր հետեւեալը.

«Հրաշալի ուխտիս պատճառ նորոգման,
Վեհանձնեայ բնութեամբ էր անզուգական,
Հայր Մատթէոսի առաւել նման,
Տէր Ստեփաննոս պետ՝ արհիական,
Վասն երախտեաց արժանի յիշման,
Որ համբուրով աստ ամփոփեցան,
Զի որք մտանեն յայս սուրբ տաճարան,
Միով հայր մերիւ զողորմիս կարդան,
Ի թիւ հայոց ՌՄՀԳ.ի Նոյեմբ. Ա.»։

**Կարապետ եպ. Եէրմիրցի** (1824). — Օծակից Ստեփան եպ.ի և աշակերտ Մատթէոս եպ. Գարամանեանի որուն կտակովը 1798էն ի վեր կը վարէր Ս. Դանիէլի վանահայր-առաջնորդութիւնը։

Արդէն զինքը Կեսարիա փոխադրել աշխատած էին անգամ մը Ֆրէնկեանները՝ Ստեփան եպ.ի կենդանութեան և չէին յաջողած։ Այս անգամ կ'ընտրուի Առաջնորդ։ Սակայն Ստեփան եպ.ի կուսակիցները ասիկա նկատելով իրենց հակառակորդներուն մէկ յաղթանակը բուռն կերպով կ'ընդդիմանան և կը յաջողին բեկանել այս ընտրութիւնը։

Ստեփան եպ.ի կուսակիցները՝ Ս. Կարապետի միաբաններէն Աւետիս Մունճուսունցի վարդապետը եպիսկոպոսացնելով Առաջնորդ կ'ընեն։

**Աւետիս եպ. Մունճուսունցի** (1825–1829 Ապրիլ 14†). — Յորջորջուած է նաև «Հայր Աւետիս»։ Ասիկա նշանաւոր եղած է իր գործունէութեամբ: Իր ատենը շինուած են Խասպաղչան, շատ մը սենեակներ, կալուածներ, զոր օրինակ արտօրայք, ջաղացք, ճէհրիլիկք և այգիք (Մասիս, 8 Նոյ. 1886, թ. 3847)։ Վտարանդին իրեն համար կը գրէ թէ «Նա եւս Կեսարացւոց խաղին կր հանդիպի եւ վաղահաս մահուամբ կր վախճանի. ըստ վկայութեան բազմաց կր թունաւորուի» (Նոյն) :

Ինքն արդէն շատոնց գործակից և փոխանորդ իր նախորդին, առաջնորդ ըլլալէ առաջ իր գործերով՝ նշանաւոր եղած է։ Այս պատճառով է որ Կ. Պոլսոյ Պատրիարքարանին որոշմամբ 1820ին Երուսաղէմ ղրկուած էր իբր քննիչ, ընկերակցութեամբ իրեն պէս Մունճուսունցի Մեսրոպ եպ. Տէօվլէթեանի որ առաջնորդ էր Էտիրնէի։

Այս եպիսկոպոսը որ ծնած էր 1770ին, աշակերտն էր Կ. Պոլսոյ Պատրիարք Զաքարիա Փօքուզեան և Յովհաննէս Չամաշըրճեան եպիսկոպոսներուն։ Յովհաննէս Պատրիարք զինքը կարգած էր առաջնորդ Էտիրնէի 1811ին, հակառակ տեղացիներու փափաքին։

1819ին երբ եպիսկոպոսանալու համար Էջմիածին կ'երթայ, Էտիրնէցիք յարմար առիթ կը համարեն զինքը մերժելու։ Պօղոս Պատրիարք կը հրամայէ Մեսրոպ եպ.ի Կեսարիա երթալ և հոն մնալ մինչև որ Էտիրնէցիք խնդրամատոյց ըլլան զինքը ընդունելու։ Հոն գտնըւած ատեն հրահանգ կու տայ որ ընկերակցութեամբ Ս. Կարապետի միաբան Աւետիս եպ.ի երթայ Երուսաղէմ, ուր միաբանութեան



մէջ շփոթ և գանգատ սկսած էր ընդդէմ Երուսաղէմացի Պետրոս և Զմիւռնացի Մուրատ անուն գանձապետներուն, որոնք վանքին կառավարութիւնը ձեռք առած էին (Սաւալան, Պատմ. Երուսաղէմի, 937)։

Մեսրոպ և Աւետիս եպ.ները կը յաջողին հրաժարեցնել այդ աշխարհականները և անոնց գործակից Դիոնեսիոս եպիսկոպոսը և առնել Թէոդորոս պատրիարքի ձեռքէն հասոյթներու և ծախքերու բոլոր հաշիւները՝ և յանձնել փոխանորդ Գաբրիէլ եպիսկոպոսին (Նոյն. Նաև Նկարագիր աղէտից Երուսաղէմի, էջ 7)։

Այս յաջող առաքելութենէն յետոյ Մեսրոպ եպ. երբ կը պատրաստուէր վերստին Կեսարիա դառնալու Էտիրնէի մէջ կիրքերը հանդարտած ըլլալով զինքը կ'ուզեն, որով 1–11/2 տարուան բացակայութենէ մը յետոյ կը դառնայ իր սեփական վիճակը՝ 1820ին և հոն կը մնայ մինչև իր մահը՝ 1840։ Իսկ Աւետիս եպ. կը դառնայ մինակը Կեսարիա՝ Ս. Կարապետի վանքը, որուն կը ծառայէ մեծ փութաջանութեամբ։ Կը վախճանի 1829 Ապրիլ 14ին և կը թաղուի վանքը։ Իր տապանաքարն էր.

«Ահեղ վճիռ վերին կոչման,
Հրաւիրեաց զիս յայս տապան,
Տէր Աւետիս յաջորդական,
Զօրեքամեայ դէտ հոգեկան:
Որք հանդիպիք սրբոյ տեղւոյս,
Գերեզմանի հանգուցելոյս,
Տուք զողորմի ննջեցելոյս,
Զի հանգիցէ յարկ վերնայոյս,
ՌՄՀԸ. Ապրիլ ԺԴ»:

**Յակոբ եպ. Անէմեան կամ Աւետիքեան կամ Աստուածատուրեան Գաղատացի** (1829–1865 Ապրիլ 5†). — Միաբան Ս. Կարապետի վանքին Ստեփան եպ. Մունճուսունցիի ժամանակ և Առաջ. փոխանորդ՝ անոր յաջորդին և համշիրակին՝ Աւետիս եպ.ի ատեն։ Տակաւին վարդապետ 15 Յունիս 1829ին Առաջնորդ կ'ընտրուի, իսկ եպիսկոպոս կը կը ձեռնադրուի 6 Նոյեմ. 1838ին։ Իր անուան Պէրաթ կ'ստանայ Պատրիարքարանը առաջին անգամ Հիճրէթի 1255 (= 1839 Քր.ի) թուականին, երբ Թանզիմաթը կը հրատարակուէր։ Քրիստոնեաներու վիճակին բարւոքման համար եղած պետական այս կարգադրութիւնը փոխանակ ժողովուրդին անդորրութեան նպաստելու կարծես թէ կուսակցական վէճերը և պայքարները սրելու աւելի նպաստած և Յակոբ եպ. Անէմեանի պաշտօնավարութիւնը դժուարացուցած է։ Ինքն չէ կրցած բարձր մնալ կուսակցական պայքարներէ և Կեսարիոյ մէջ պատմական նշանակութիւն և տարեգրութեան մէջ անմոռանալի Մանուկեան–Ֆրէնկեան կուսակցական վէճին պատճառով բաւական չարչարուած և փոթորկալից պաշտօնավարութիւն մը ունեցած է։ Պայքարը որ արդէն իրմէն առաջ սկսած էր, — ինչպէս տեսնուեցաւ — առաւ մեծ համեմատութիւններ։ Ինքն ալ խառնուեցաւ վէճին և դարձաւ կուսակցութեան մը մարդը, և հետեւաբար իր կուսակիցներուն յաջողութիւններուն և ձախողութիւններուն բոլոր հետեւանքը կրեց։

Յակոբ եպ. որ խիստ ու կռուողի մարդ մը ըլլալ կը թուի, այս պայքարին մէջ չվարանեցաւ միջնադարեան զէնքերու դիմելու և իր

հակառակորդները եկեղեցական բանադրանքի ենթարկեց յաճախ։ Իր օրով Ս. Կարապետի վանքին իբր ուսուցիչ և դասախօս, Պէզճեան Ցարութիւն Ամիրայի յանձնարարութեամբ կու գայ 1830ին Կ. Պոլիսէն Գրիգոր վրդ. Զաճաք-Գալեցին որուն շուրջ ալ կ'առեղծուի պայքար մը։ Այս վարդապետը՝ կուսակցութիւններէն մէկը ամբաստանեց իբր անկրօն և անբարոյական, այնպէս որ կռիւը աւելի մեծցաւ։

Կ. Պոլսոյ Պատրիարքարանը ստիպուեցաւ միջամտել և 1839ին Յակոբ եպ.ը կանչեց Կ. Պոլիս, ուր պահ մը Գալատիո Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն քարոզչութիւնը վարեց։ Քիչ յետոյ սակայն դարձաւ Կեսարիա խոստում տալով թէ Կ. Պոլիս Ազգ. Պատրիարքարանին առանց հարցնելու և անոր հաւանութիւնը առնելու ոչ ոք պիտի բանադրէ։ Սակայն հազիւ թէ Կեսարիա դարձած էր երբ անհամաձայնութիւնը նորէն սկսաւ։ Կուսակցական պայքարը իր սաստկագոյն աստիճանին կը հասնի հետզհետէ վասնզի Մանիկ օղլուներու կուսակցութեան կը միանան Կիւմշ-օղլուներու պէս նաև Արզու-օղլուները և Մութաֆ օղլուները։ Յակոբոս պատրիարք իր երկրորդ պաշտօնավարութեան (1848-1858) սկիզբը ուրիշ միջոց չի գտներ եթէ ոչ պաշտօնանկընել Յակոբ եպ.ը, և Կեսարիա Առաջ. փոխանորդ մը ղրկել թեմը կառավարելու համար։ Սակայն Յակոբ եպ. անդրդուելի կը մնայ և վանքէն չի հեռանար։

Իր այս յամառութիւնը կը քաջալերուէր իր կուսակիցներէն — որոնց գլխաւորն էր Կիւլպէնկեան Կիւլապի Չէլէպին — որոնք Գերագոյն ժողովին կը դիմեն և կաթոլիկութեան յարելու սպառնալիքով կ'ստիպեն Պատրիարքարանը որ հաւանի Յակոբ եպ.ի Կեսարիա մնալուն։ Կեդր. վարչութիւնը կը հաւանի պայմանով որ միայն վանահայրութեամբ զբաղի և Պատր. Փոխանորդները վարեն թեմական գործերը, և այս նպատակով կը ղրկեն.

**Մատթէոս վրդ. Խասգիւղցի (Ն. Պոլսոյ)** (1848-1849).— Եօզկատի առաջնորդը որ մէկ տարի կը մնայ և կ'երթայ դարձեալ իր վիճակը։

Կիլիկիոյ Կիրակոս կաթ. (1796-1822 Սեպտ. 10) 1820ին Կ. Պոլիսէն Սիս դարձին զայն հետը տանելով վարդապետ ձեռնադրած և առաջնորդ կարգած էր Պօզուքի, ուրկէ յետոյ փոխադրած էր Եօզկատ։ Միջանկեալ 1850-1857 վարած է նաև Գաղատիոյ առաջնորդութիւնը։ Գաղատացիք զինքը կը կոչէին Տէլի-Մաթէոս։ Վախճանած է Եօզկատ 1862ին։

Մատթէոս վրդ.ի պաշտօնը՝ իրականին մէջ Առաջ. Տեղապահութիւնն էր, և վերջ գտաւ անիկա երբ կեդրոնը Կեսարիոյ Առաջնորդ ընտրեց՝

**Յակոբ Արքեպ. Հանէսեան Էվէրէկցին** (1849), որ Գաղատիոյ առաջնորդական պաշտօնին վրայ կը գտնուէր (1845-1849)։ Յակոբ Արքեպ. վախնալով Կեսարիոյ մէջ տիրող կացութենէն առանց ինքն երթալու հոն ղրկեց իբր փոխանորդ պետական պէրաթով նոյնիսկ (ըստ Պատրիարքարանի արձանագրութեանց, որմէ քաղած եմ այս տեղեկութիւնները) վարդապետ մը որ էր.

**Յովհաննէս վրդ. Սեբաստացի** (1849-1851)։ Անիկա իբր տեղակալ կը պաշտօնավարէ երկու տարի, սակայն իրեն դէմ հանուած խոչընդոտներէն և դժուարութիւններէն շատ նեղուած կը դառնայ Կ. Պոլիս։ Անոր կը յաջորդէ



**Իսրայէլ վրդ.** (1851-1852), որ մէկ տարի կը մնայ Կեսարիա։ Իրեն կը յաջորդէ

**Մեսրոպ վրդ. Մինթանճեան Ն. Պոլսեցի** (1853-1854) Ճանիկի առաջնորդը որ Պատրիարքարանը Պէրաթով Տեղապահ կը ղրկէ Կեսարիա և միայն մէկ տարի կրնայ մնալ։ Անիկա աշակերտն էր Յակոբոս Պատրիարքի և 1845էն ի վեր կը վարէր Ճանիկի առաջնորդութիւնը։ 1852ին Ճանիկի առաջնորդութիւնը թողլով Տրապիզոնի առաջնորդ կ'ըլլայ, սակայն կարճ պաշտօնավարութենէ մը յետոյ Կեսարիա կը ղրկուի։ Կեսարիոյ մէջ մէկ տարի մնալէ յետոյ երբ կը հեռանայ այս անգամ «Պոնտոսեան վիճակաց» այսինքն թէ՛ Տրապիզոնի և թէ՛ Ճանիկի Առաջնորդ կ'ըլլայ (1854)։

1856ին կը թողու Տրապիզոնը և մինչև մահը (1866 Ապրիլ 18) կը վարէ Ճանիկի վիճակին առաջնորդութիւնը, արդիւնաւոր գործունէութեամբ և ձգելով խելացի, գործունեայ, հեռատես, սրտոտ, ծանրաբարոյ և շինարար Առաջնորդի մը անունը։

Այս եկեղեցականը ամէն ջանք կ'ընէ Յակոբ եպ.ի հետ համաձայնութեան մը գալու համար սակայն իր ջանքերը ի զուր կ'անցնին։ Քիչ մը վանքը և քիչ մը քաղաքը նստելէ յետոյ յուսահատ ետ կը դառնայ Կ. Պոլիս։ Յակոբոս Պատրիարք այս անգամ կը մտածէ Յակոբ եպ.ը վերահաստատել իր վանահայրութեան պաշտօնին մէջ 1854 թուակիր (1271 հիճր.) նոր պէրաթով մը և քաղաքը կառավարել փոխ-առաջնորդով։ Ուստի իբր Մեսրոպ վրդ. Մինթանճեանի յաջորդ Փոխ. Առաջ. կը նշանակէ տեղւոյն քահանաներէն

**Տ. Մարտիրոս Քհ. Նիկողոսեան Կեսարացին** (1854-1863) 1854 Սեպ. 18 թուակիր կոնդակով մը։ Այս քահանան որ արժանաւոր եկեղեցական մըն էր ծնած էր 1815ին և մկրտուած Գրիգոր անունով։ Նախ աշակերտած է Պօղոս Ֆիզիքա վարժապետին երբ անիկա Կեսարիա աքսորուած էր։ Յետոյ ուսուցչութիւն ըրած է։ 1847ին քահանայ կը ձեռնադրուի և 1847 Ապրիլ 8ին **Ճեմարան** անուն վարժարան մը կը բանայ Կեսարիոյ Ս. Սարգիս եկեղեցիին կից։

1850ին այդ վարժարանը փակելու կ'ստիպուի, իրեն գլխաւոր նեցուկ և նիւթապէս սատարող Սարգիս Արզեանի մահուան պատճառով։ Այն ատեն կ'սկսի դասախօսել Ս. Սարգիս եկեղեցւոյ կից վարժարանին մէջ և կը բանայ առաջին



Տ. ՄԱՐՏԻՐՈՍ ՔՀ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ
(1815 - 1895)

անգամ աղջկանց վարժարան մը, ինչպէս նաև կը հաստատէ ընթերցարան և գիշերային դասախօսու թիւններ՝ չափահասներու համար։

Յակոբ եպ. որ միշտ իր առաջնորդական իրաւանց վրայ կը պընդէր, կը դառէ չարունակ Տ. Մարտիրոս քհ.ի դէմ, որ իր կարգին Ֆրէնկեան-Մանուկեան վէճին կը մասնակցի։ Ինքն առաջնորդին կուսակից Մանուկեաններու դէմ՝ կը հակի անոնց հակառակորդներուն։

Առաջնորդը՝ Մարտիրոս քհ.ն և ուրիշ քահանաներ կը բանադրէ (Միւնացիի Էրճիյաս, թ. 58) 1861ին, և վէճին կու տայ խոշոր համեմատութիւն մը։ Պատրիարքարանը կ'ստիպուի միջամտել և 1862ին կազմել յանձնաժողով մը երկու կուսակցութեանց կողմէ իբր ներկայացուցիչ նշանակուած՝ Կ. Պոլիս հաստատուած ազգային շրջանակներու մէջ անուն և դիրք ունեցող հետեւեալ ազգայիններէն (Նոյն, թ. 174).

Բարսեղ Հալաճեան

Բարսեղ Օհաննեան

Գէորգ Գըլըճեան

Մկրտիչ Թաշճեան

Մկրտիչ Մըթաֆեան

Սարգիս Ջամքէրթէնեան

Յովհաննէս Կիւմշեան

Յովհաննէս Քէլէքեան

Վէճին գլխաւորապէս սուր համեմատութիւններ առած մասն էր զինուորական տուրքի բաժանման հարցը (Նոյն, 12 Մայիս 1862, թ. 176)։ Յանձնաժողովը ձախող որոշումը կու տայ վիճակով «Միլլէթ վէքիլ»ի մը ընտրելու՝ ինչ որ իրաւամբ Կարապետ Փանոսեանի ծաղրին ու քննադատութեան առարկայ կ'ըլլայ (Նոյն, 5 Մայիս 1862, թիւ 173)։

Այս յանձնաժողովը որ Կ. Պոլիս Վալիտէ խանի մէջ կը գումարուէր 1862 Յունիսին իրաւախոհական կարգադրութեան մը կը յանգի, սակայն իր որոշումները Կեսարիոյ մէջ գործադրել շատ դիւրին չըլլար։ Այս պատճառով Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովը 1863ին Կ. Պոլիս կը հրաւիրէ Տ. Մարտիրոս քհ.ն Յակոբ եպ.ի հետ Խառն Ժողովէն ընտրուած Յանձնաժողովին առջև քննուելու համար։ Երբ Տ. Մարտիրոս կը ներկայանայ Պատրիարքը իրեն հետ անարգանօք կը խօսի։ Տ. Մարտիրոս կը պատասխանէ թէ «Ս. Պատրիարքը իբր ամբաստանիչ կը գտնուի՞ հոդ թէ իբր դատաւոր»։ Այս պատասխանին վրայ Բարունակ պէյ Ֆէրուխան, կռահելով քահանային արժանաւորութիւնը և գիտակցութիւնը, յարգանք ցոյց կու տայ։ Տ. Մարտիրոս անպարտ կ'արձակուի, միայն կ'որոշուի որ երթայ Կեսարիա, և հնազանդութիւն յայտնէ իր հոգեւոր ծնողքին։ Այս կարգադրութեամբ որով իբր թէ հաշտութիւն կը գոյանար Կեսարիոյ մէջ տարիներէ ի վեր իրարու դէմ մաքառող երկու կուսակցութեանց մէջ, վերջ կը գտնէր Տ. Մարտիրոս քհ.ի պաշտօնը և Յակոբ եպ. կը դառնար կրկին Վանահայր-Առաջնորդ Կեսարիոյ։ Հետեւաբար Տ. Մարտիրոս քհ. Կեսարիան ձգելով Կ. Պոլիս հաստատուելու փորձ մը կ'ընէ և կը մնայ Կէտիկ Փաշա, և 1863 Մարտ 1էն սկսեալ կը հրատարակէ «Վարդ Կեսարիոյ» անուն պարբերական մը որ հազիւ մէկ տարի կը շարունակուի։

Այս միջոցին (1864 Փետրուար) Կ. Պոլսոյ Կեդրոնական Վարչութիւնը զինքը կը ղրկէ Ռոտոսթօ իբր Սահմանադրական գործողու-



թեանց քննիչ և գործադրիչ, պաշտօն՝ որ լիովին կատարելու միջոց չէ ձգուած իրեն և գրեթէ ապարդիւն վերադարձած է Կ. Պոլիս, ուրկէ գարձած է իր հայրենիքը։

1868էն 1870 Թալասի մէջ կրթական գործով կ'զբաղի իսկ 1870ին դարձեալ մասնաւոր վարժարան մը կը բանայ Կեսարիոյ մէջ որ հազիւ հինգ տարի կը շարունակուի։ Այս միջոցին «Թանգարան» անունով կիրակնօրեայ դասարան մը հաստատած է։ 1881ին պահ մը կրկին Կ. Պոլիս կու գայ և Կէտիկ փաշայի վարժարանը ուսուցիչ կ'ըլլայ։

ՎԱՐԴ

ԿԵՍԱՐԻՈՅ

(ԿԻԻԼՋԱՐԸ ԳԱՑՍԱՐԻՑԷ)

ՕՐԱԳԻՐ ԵՐԿՇԱԲԱԹԵԱՑ

15 ԱՊՐԻԼ — Ա. ՏԱՐԻ 1863 — ԹԻՒ 4

1881ին սարիա դարձին կ'անուանուի Առաջ. փոխանորդ և 43 ամիս պաշտօն կը վարէ 5 ոսկի ամսականով, ինչ որ խըղճամիտ(!) Կեսարացիք կը զլանան վճարել իրեն, այնպէս որ 100 ոսկի պահանջ կ'ունենայ։ Տ. Մարտիրոս քհ. կ'ստիպուի դիմել պետական դատարան և իրաւունքը հաստատել (Մասիս, թ. 3402)։

Անշահախնդիր, անփառունակ և ուսումնական քահանային և քաջ քարոզիչի համբաւ ձգած է Կեսարիոյ և Կ. Պոլսոյ մէջ։ Մեռած է 'ի Կեսարիա 1895 Յունուար 6ին և թաղուած Մայր Եկեղեցւոյ բակը։ Իր 45–50 տարիներու քահանայական և ուսուցչական պաշտօնավարութեամբ, հայերէնի, թուրքերէնի և ֆրանսերէնի քաջահմուտ այս քահանան, Կեսարիոյ Հայութեան մատուցած է ամենամեծ ծառայութիւն, հասցնելով բազմաթիւ աշակերտներ։ Բոլոր Նախորդ սերունդին քիչ շատ ուսում տեսած անձերը իր աշակերտներն էին։

Ինչպէս տեսնուեցաւ 1863ին վերջ տրուելով Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեանի պաշտօնին Յակոբ եպ. դարձեալ Վանահայր-Առաջնորդ կը դառնայ Կ. Պոլսոյ Խառն Ժողովին իրաւախոհական կարգադրութեամբ։ Այս համաձայնութիւնը կը հռչակուի «Միութիւն Կեսարիոյ» անունով։ Սակայն այս համաձայնութիւնը շատ կարճ կը տեւէ։ 1864ին դարձեալ կիրքերը կը բորբոքին և Պատրիարքարանը կ'ստիպուի դարձեալ Կեսարիոյ առաջնորդութեան գործերով զբաղիլ։ Խառն

*ժողովը Կեսարիոյ վանքին բարեկարգութեան համար Կեսարիա կը ղրկէ կրկին իբր Փոխ-Առաջնորդ՝ Թօգատի առաջնորդ*

**Յակոբ Արքեպ. Հանէսեան Էվէրէկցին** (1864–1865) (Տեղեկագիր Քաղ. Ժողովոյ Կեդր. Վարչութեան)։ *Այս անգամ կը յաջողի գոնէ Կեսարիա մտնել և մէկ տարի կը պաշտօնավարէ։ Յետոյ կրկին կը դառնայ Գաղատիա ուր կը վախճանի* 1866*ին։ Յակոբ եպ. Գաղատացի որ երբեք ձեռնթափ էր եղած և Կեսարիայէն զինքը հեռացնելու համար Պատրիարքարանի կարգադրութիւնները միշտ ի դերև հանած, վերջապէս մեռաւ* 1865 *Ապրիլ 5ին,* 85 *տարեկան,* 36 *տարիներու այսքան խռովալից և յուզումներով լի պաշտօնավարութենէ մը յետոյ։*

*Իր պաշտօնավարութեան* 30 *տարիներու շրջանը ոչ միայն մշտատեւ պայքարի ժամանակամիջոց մը եղաւ, այլ բնական աղէտներ ալ պակաս չեղան։ Աւետիս Պէրպէրեան* (Պատմ. Հայոց 260) *կը պատմէ թէ* 1835*ին* «եղեւ երկրաշարժութիւն անագին ի Կեսարիա Կապադովկիացւոց, որ սկսեալ յառաջներորդ օրէ Օգոստոսի՝ տեւեաց զամ մի ողջոյն, եւ արար վնաս բազումս ի քաղաքին, եւ առաւել եւս ի գիւղօրէս, յորոց եւ զերկուսն կացոյց իբրեւ անապատ ամայի եւ անմարդաբնակ, կործանեաց զտունս բազումս, զքառուկիր շինուածս, զմզկիթս եւ զբաղանիս, *փլոյց և զորմունս պարտիզի Սուրբ Կարապետի վանիցն և զքանի ինչ սենեակս միաբանից։* Եւ յայսմ երկրաշարժութեան մեռան անձինք ի Կեսարիա եւ ի գիւղօրէս նորին ըստ ոմանց եօթն հարիւր, եւ ըստ այլոց հինգ հարիւր, եւ ըստ պատմելոյ առաջնորդի նորուն տեառն Յակոբայ վարդապետին՝ երեք հարիւր երեսուն ոգիք»։

*Այսպէս բնական պատուհասներու և մարդկային վէճերու, պայքարի և խառնակութեանց պատճառով, Ս. Կարապետի վանքը պարտքի տակ ինկած է երեք անգամ։ Առաջին անգամ* 100,000 *ղրուշ պարտքը վճարուած է Գազազ Յարութիւն ամիրայի կողմէ, երկրորդ անգամ՝ վանքին սեփական անօթներու և արծաթներու վաճառման արդիւնքով, իսկ երրորդ անգամ՝ Թալասցի Յակոբ Պէյլէրեանի առատաձեռնութեամբ*(1)։

*Գազազ Յարութիւն Ամիրա Պէզճեան վանքին պարտքը վճարելէն զատ, շատ մեծ քանակութեամբ նուէր ու յիշատակներ ըրած է վանքին եկեղեցւոյն, որոնց ցանկը արձանագրուած էր գանձատան տոմարին մէջ մանրամասնօրէն։*

*Հակառակ սակայն այս տագնապներուն Յակոբ եպ. Գաղատացի վանքին մէջ շինարարական գործեր կատարած է։*

*Իր օրով շինուած է հոն մեծ ջրամբար մը ուխտաւորաց թաղին մէջ, ինչպէս կը տեսնուի անոր յիշատակարանէն որ հետեւեալն է.*

«Ի վերատեսչութեան Տեառն Յակոբ բարեջանիկ վարդապետի, յիշատակ է Մահտէսի Էվէրէկցի Ղշքէյլէկեան պարոն Տէտէյի վասն հոգւոյ հանգուցեալ մահտեսի Հանէս աղայի հօրն եւ վասն համայն կենդանեաց եւ ննջեցելոց. 1831»։

*Նոյնպէս ինքն շինած է իր և քրոջ ծախքով ուխտաւորաց եօթը թաղերէն մին՝ այն որ* Նոր թաղ *կը կոչուէր և ունէր* 14 *սենեակներ։*

*Ահա այդ շէնքին յիշատակարանը.*

(1) *Յակոբ Պէյլէրեան վճարած է* 1864*ին* 200.000 *ղրշ. (Մասիս, թ.* 627), *իբր երախտագէտ զաւակ Ս. Կարապետի ուր ուսում առած էր ինք։ Ամէն տարի Ս. Յովհ. Կարապետի օրը հոգեհանգիստ կը կատարուէր իր և պարագաներուն համար։*



«Ծախք պարսպած նորակերտիս,
Արդեամբ ուխտիս ձեռամբ դիտիս,
Գաղատացւոյ արհի պետիս,
Որ Առաջնորդ ժամանակիս։
Գործ մեծագործ արդէն շինեալ,
Զորեքտասան սենեակ կերտեալ,
Ներքին վերին հիմամբք հաստեալ,
Հրաշագեղ տեսլեամբ փայլեալ։
Խառնազնաց այս սենեկաց,
Յակոբ Սրբազան հոգաց,
Անջնջելի յիշատակեաց,
Վասն ննջեցելոց փառաց։
1857 Օգոստոս 25»

*Յակոբ եպ. Գաղատացի ևս թաղուած է առաջնորդներու յատուկ փոքրիկ գերեզմանատան մէջ։*

*Իր տապանաքարին վրայ կը կարդացուէր.*

«Ի Գաղատիոյ տունկ բարեջան
Բողբոջեալ ի մեծ զարմէ Անէմեան
Ամբարձեալ Տէրամբ յԱթոռ Կեսարեան
Տէր Յակոբ արհի վեհ մեր սրբազան,
Փայլեալ նոխ արդեամբ յայս Ս. Մենաստան
Բարեկարգութեամբ գործովք զանազան,
Երեսուն եւ վեց ամի Տեսչութեան,
Փոխեցաւ յաստեաց յերկնային խորան,
Յիսուս Քրիստոս
Ի հասակի ութսուն եւ վեց ամաց
1865 եւ Ապրիլ 5 յօր Միաշաբաթի
Յարութեան Տեառն»։

**Եղիա եպ. Ճրնհրդեան** *երբեմն* **Սէճէրեան** *կամ* **Դերձակեան Էճքերէցի** (1865–1886 *Մայիս* 8†)։ *Կ. Պոլսոյ վարչութեան որոշումով կեսարիայէն ներկայացուած հանրագրութեան մը համաձայն* (Մասիս, *թ.* 690) *նոյնիսկ Յակոբ եպ.ի կենդանութեան՝ Յակոբ եպ. Հանէսեանի մեկնումէն յետոյ առաջնորդ ընտրուած է (տես* Տեղեկագիր Քաղ. Ժողովոյ Կեդր. վարչութեան, *էջ* 29)։ *Ժողովուրդը զինքը մականուանած էր «Քէչկէճի Սրբազան»։ Իր մասին Վտարանդին ժամանակակից մը և ականատես մը՝ իր կենդանութեան չարաչար քննադատող յօդուածներ գրելէ յետոյ (տես* Մասիս, 1882 *թիւ* 3245–64–80–85 *և այլ) իր մահէն յետոյ* 1886*ին (նոյն, թ.* 3847) *կը գրէ հետեւեալը.*

«Յակոբոսի յաջորդեց Եղիա վարդապետ, Եւքառացի։ Եղիա ըստ ինքեան առաւելութիւն մը չունէր, իրմէ աւելի արժանաւոր զտնուող այլ միաբանից վրայ եւ մանաւանդ անցեալէն կը կրէր իր վրան անջնջելի կեղտ մը, Հանի Մանուկին դէպքին պատճառաւ։ Այս դէպքն... վանուց յիսուն հազար դահեկանէ աւելի արժէքաւոր շուրջառաց եւ այլ կարասեաց կորստեան պատճառ եղաւ եւ յոյժ գայթակղալից գործեր ի լոյս բերաւ, ըստ քաղաքականութեանց գոյներ դուրս տուաւ, նոյն ժամանակ Եղիա Թոմարզայի վանքը դրկուեցաւ ժամանակ մը՝ եւ ապա ընդունուեցաւ Յակոբոսի շնորհանց հետեւեալ նշանաւոր խօսքերով. **«Գրեալ է, տուն իմ տուն աղօթից կոչեսցի եւ դուք արարէք զայդ այրս աւազակաց»**։

«Եղիա Սրբազան բոլորովին անկար մարդ մը չէր, բայց Կեսարացի մեծ աղային հաճելի գտնուելու համար, անոնց ձեռքը մեքենայ մը եղաւ: Գիտէր որ մեծ աղաները շինող եւ բարեկարգող դէտեր չէին ուզեր, ուստի քար քարի վրայ չդրաւ. հոգ չըրաւ բնաւ կալուածոց նորոգութեան եւ այլ այսպիսի գործոց զանոնք ալ յանձնեց մեծ աղային գործակատար Առաքել վարդապետին. մարդուս արտասուքը կը ցայտէ վանուց այժմու տեսարանին ի տես:

«Ոչինչ բրաւ Եղիա Սրբազան, այլ եղածներն ալ աւրեց, պարտէզներն անշքացուց պտղատու ծառերը կտրելով, ամէն ինչ որ վանուց կը վերաբերէր բոլորովին մոռացութեան մէջ թաղեց եւ անհոգութեամբ պարարեց ինքզինք: Յակոբոսի հիմնած դպրոցը քայքայեց եւ ապա սփիւռեալ լրագրաց մէջ գրուածներէն, մէկ քանի տղայք ժողովեց կրթելու համար: Ասի առաջնոյն հակապատկերն էր. վանուց աշակերտք յայտնի էին իրենց պատառոտուն զգեստէն. բոպիկ, գլուխնին բաց եւ թշուառութենէն երեսնին դեղնած ըլլալէն, որ անօթութեան եւ անխնամ մնալուն հետեւանքն է: Այս ալ չտեւեց: Սենեակներու անմաքրութիւնն ու աղտոտութիւնը, գաւիթներուն եւ բակերուն օրերով աւելի անխնամ թողուլին՝ իր օրերն սովորական եղած էին:

«Իբր կենդանութեան ատեն պակաս մնացածներն իւր մահէն յետոյ կատարեցան ի ձեռն Գրիգոր վրդ. Առաքելեանի»:

*Ուրիշ գրող մը նոյնպէս ներկայացնելով զինքը կ'ըսէ թէ* «Եղիա եպ. պատկառելի ծերունի, հմուտ ժամանակին կրօնական ամէն գիտութեանց՝ անկարող էր սակայն վարչականութեան մէջ: Առաջնորդարանին մութ անկիւնին մէջ սենեակ մը, զարդարուած արեւելեան գորգերով եւ կակուղիկ բազմոցներով, ճգնողական կեանք մը կ'անցունէր:

«Վանքը, կրնամ ըսել, խղճմտօրէն աւեր դարձած էր: Լուսահոգին իր այս թմրած վիճակին մէջ իսկ, պահելու յաջողած էր սակայն վանքի հասոյթներէն բաւականաչափ գումար մը, որ կը մզլոտէր դարանին մէջ, անակնկալ վտանգներէ ալ ոչ իսկ զերծ:

«... Իր գիրուկ մարմինը, ... երկու աղլաս բարձերու միջեւ, մէկ կողմէն միւսը կը գլտորէր անընդհատ քթախոտ քաշելով»:

1875*ին վերջապէս առաջնորդութիւնը անջատուեցաւ վանահայրութենէն և որոշուեցաւ որ Առաջնորդը քաղաքը բնակի և փոխանորդ մը ունենայ վանքին մէջ։*

*Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ Գէորգ Դ.էն* 1879 *Մայիս* 29*ին, առանց հաւանութեան իր հօտին* (*Յ. Գ. Զամուրեան*, Մասիս, *թ.* 3401)։

*Տրդատ եպ. Պալեան* (Հայ Վանօրայք, *էջ* 63) *և Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան* (1928, Ընդ. Օրացոյց, *էջ* 236) *ճշմարտութեան համար իրենք ալ կը հաստատեն թէ ոևէ նշանակելի գործ չէ ունեցած, և անհոգ և անփոյթ առաջնորդ մը եղած է և վանքը գրեթէ աւերակի վերածած։*

*Ճեմարանը գոցուած է և ուսումնական վառարան մը ըլլալէ դադրած է վանքը, որ դարձած է որջ՝ մակաբոյծ և կռուարար միաբանութեան մը և բոյն «ղօճապաշիական» խռովութեանց։ Այս շրջանին նախապէս պատրաստուած կարող միաբաններու քով տեղաւորուած են փոքրաւորներ, որոնք կը ծառայէին և կ'սպասաւորէին, ուսանելով ձայնաւորութիւն և հասարակ ընթերցանութիւն։*

*Եղիա եպ.ի միակ առաքինութիւնը իր մաքրակրօն կենցաղն էր։ Իր յուղարկաւորութեան օրը Կեսարացի քահանայ մը որ խորամանկութեամբ նշանաւոր հանդիսացած էր, արդարացնելու համար Եղիայի*



*գործերը, իր դամբանականին մէջ կ'ըսէ թէ* «կ'ըսեն թէ Եղիա Սրբազան ծառերը այրեց, տուներն աւրեց, բայց ծառը «չէօբ» մի է եւ տունը հող եւ քար, ինչ ձեւ որ ունենան, տարբերութիւն չըներ» (*տես* Մասիս, *թ.* 3847)։

*Իր օրով փոխանորդութեան պաշտօն վարած են.* **1. Յակոբ վրդ. Աբրահամեան, Ակէրմիրցի**(1), **2. Գրիգոր վրդ. Առաքելեան Գէյլէկէսեցի** (2)։

*Եղիա եպ. Ճընճըղեան կը վախճանի* 1886 *Մայիս* 8*ին ութսունամեայ, և Մայիս* 10*ին կը կատարուի իր թաղումը առաջնորդներու գերեզմանատան մէջ, ուր կը մնար իր դամբանը հետեւեալ արձանագրութեամբ։*

«ՌՄԿ. (1260+551=1811) Ծնունդ Մայիս
Ընտրի Առաջնորդ 1865 Մայիս
Ձեռնադրի եպիսկոպոս 1879 Մայիս,
Ցո՛ւց, ո՛ անցորդ. մեր հասարակ
Այս է բաժին՝ վեհ անյատակ,
Կենաց բանին անձայն քարոզ,
Տէր Եղիա եպիսկոպոս,
Հայր իւր Սէֆէր, զարմ Դերձակեան.
Քսան մի ամս յայս Մենաստան
Մաքուր ի կրօնս այլ եւ ներհուն
Դէտ կացեալ՝ զիւր մահկանացուն
Կնքելով՝ մեզ ազդէ խրախոյս,
Անդր ըստ շիրիմ ձգտիլ ի յոյս
ՌՅԼԵ. վախճան 1886 Մայիս 8»:

*Իր մեռած ատեն ըսուած է թէ թողած է* 1000 *ոսկի* (Փունջ, *թ.* 1996) *որ սակայն երեւան չէ եկած, հաւանօրէն կողոպտուած ըլլալով իր շուրջիններէն։*

**Մեսրոպ վրդ. Ճերմակեան** (1886) (*ընտրեալ*).— *Եղիա եպ.ի մահէն յետոյ գաւառական ժողովէն Առաջնորդ ընտրուած՝ փոխանակ իր պաշտօնատեղիին ուղղակի Էջմիածին կ'երթայ եպիսկոպոսանալու բայց չի յաջողիր վիճակէն վկայագիր չունենալուն համար։ Դառնա-*

(1) *Երկար ժամանակ այլևայլ տեղեր քննիչ, առաջնորդ և փոխանորդ ղրկուած և գոհացուցիչ պաշտօնավարութիւն ունեցած է։ Եղիա եպ.ի ծերութեան օրերուն քաղաքը ինքն կը նստէր իբր փոխանորդ և կը նախագահէր ժողովներուն։ Աշխատասէր և գործունեայ անձ մը եղած է.* 1883*ին փոխանորդ էր* (Մասիս, *թ.* 3445)։

(2) *Լիազօր հաշուակալ, վանահայր, քննիչ եւլն. քանի մէկ տարի «վէքիլխարճութեան» (մատակարարութեան) պաշտօն վարած է և Եղիա եպ.ի մահէն յետոյ վանքին երեք միաբաններուն քուէով, Տեղապահ ընտրուած է, սակայն հազիւ* 15 *օր վայելած է այս պաշտօնը, վասնզի Յարութիւն պատրիարք,* 24 *Մայիս* 1886*ին իբր ապօրէն՝ իր ընտրութիւնը բեկանած և դադրեցուցած է պաշտօնէն։*

*Այս վարդապետին համար, կ'ըսուի թէ* (*տես* Մասիս, *թ.* 3847) *կողոպտած է Եղիա եպ.ի հարստութիւնը անոր մահէն յետոյ և անոր թողած կտակը ի նպաստ Մանճըլընի և Եւքարայի եկեղեցիներուն անգործադրելի մնացած է։*

ցած կը մերժէ Կեսարիա երթալ։ Այս վարդապետը ծնած է 1830 Յունիս 10ին Հայ-Կաթոլիկ ծնողքէ։ Վենետիկի մէջ իր ուսումը շարունակած եւ հոն վարդապետ ձեռնադրուած 1854ին։ 1879ին Հասունեան պայքարին հետեւանօք յարեցաւ Հայ Եկեղեցւոյն եւ Սկիւտար Ս. Խաչ եկեղեցիին քարոզիչ կարգուեցաւ։ 1880ին Առ. Տեղ. կարգուեցաւ Էտիրնէի ուր երկու տարի մնաց եւ դարձաւ Կ. Պոլիս Առաջ. ընտրութիւն կատարել տալէ յետոյ։

1882ին Կեսարիոյ Առ. Տեղապահ կ'ընտրուի Եղիա եպ.ի կենդանութեան, զայն չեզոքացնելու դիտումով, սակայն Կեսարացիք մէկ տարի ճամբու ծախքը չեն ղրկեր որ Կեսարիա երթայ (Մասիս, 1883, թ. 3401)։ Կեսարացիք իրենց այս մեղքը քաւելու համար է որ թերեւս զինքը Առաջնորդ կ'ընտրեն Եղիա եպ.ի մահէն յետոյ։ Այս անգամ ալ ինքն էր որ իր գործը հաստատ կապել կ'ուզէ եպիսկոպոսացումը կանխիկ պահանջելով։

Կեսարիոյ իր առաջնորդութիւնը վիժելէն յետոյ Գէորգեան Ճեմարանին մէջ ուսուցչութիւն կ'ընէ պահ մը եւ ապա Ատրպատական կը ղրկուի։ 1890ական թուականին սկիզբները Կ. Պոլիս կը դառնայ եւ պահ մը Եէնի-Գաբուի քարոզիչ կ'ըլլայ եւ վերջապէս յուսահատ եպիսկոպոսանալէ դարձեալ Կաթոլիկ Պատրիարքարան կ'ապաստանի եւ անդ կը մեռնի 1899ին։

**Գէորգ Ծ. վրդ. Ռուսճուգլեան (1886 - 1887).** — Ծնած Ֆիլիպէ 1829ին, աշխարհական անունով Թադէոս Պօղոսեան։ 1856ին կ'ամուսնանայ եւ վեց զաւակ կ'ունենայ։ 1864ին քահանայ։ 1872ին կ'այրիանայ եւ 1876 Սեպտ. 26ին շուշտակ վարդապետ։ 1877-79 Առ. Տեղ. Էտիրնէի։ Երբ 1878 Յունվար 8ին Ռուսները Էտիրնէ կը մտնեն պատեհութիւնը կ'օգտագործէ Մեծ-Դուքս Նիկոլայի ներկայացնելու Հայոց ցաւերը եւ դարման խնդրելու, որով ինքը կ'ըլլայ «Հայկական խնդրոյ» սկզբնական հեղինակը։ 1878ին կը դառնայ Կ. Պոլիս եւ կը կարգուի 1880 Նոյ. 1ին Պատր. Փոխանորդ։ 1883ին Գաղատիոյ Առ. Տեղ. կ'ընտրուի, սակայն Ներսէս Պատրիարքի հիւանդութիւնը արգելք կ'ըլլայ իր մեկնումին։

Ռուսճուգլեան ձեռնահասութեամբ կը վարէ իր պաշտօնը եւ այնքան կը գնահատուի որ 1884 Հոկտ. 26ին՝ Ներսէս պատրիարքի մահէն յետոյ Կ. Պոլսոյ Պատրիարքական Տեղապահ կ'ընտրուի, ինչ որ բացառիկ պատիւ մըն էր քանի որ Տեղապահը միշտ եպիսկոպոսներէն կ'առնուէր։

Գէորգ վրդ. կը վարէ այս պաշտօնը մինչեւ Յարութիւն Պատրիարքի պաշտօնի ձեռնարկելը։ Ապա կը թողու վասնզի Կեսարիոյ Գաւառական Ընդհանուր Ժողովը զինքն կ'ընտրէ վիճակին առաջնորդ, 1886 Յունիսին (Փունջ, թ. 1999) եւ կեդրոնը կը վաւերացնէ այս ընտրութիւնը (Նոյն թ. 2019)։ Գէորգ վրդ. նախ կը հրաժարի. սակայն խառն ժողովը կը մերժէ (Նոյն 2021), ինքն կը համակերպի, եւ իր անուան կը հանուի պէրաթը։ Սակայն ճամբու պատրաստութիւններու վրայ էր երբ Կ. Պոլիս կը հասնի հազարի չափ ստորագրութիւններով հանրագրութիւն մը որով Կեսարացիք Եօզղատի Առաջ. Տեղ. Աբրահամ եպ. Մամիկոնեանը կ'ուզէին իբր առաջնորդ, վասնզի այդ օրերուն այդ եկեղեցականը Կեսարիա այցելած էր, (Փունջ, թ. 2021) եւ փոփոխամիտ Կեսարացիք իրմէ տարուած էին։



Այս արարքը կ'երեւի թէ վիրաւորած է զինքը, վասնզի քիչ յետոյ 1887 Մարտին կը հրաժարի եւ Ապրիլ 18ին կ'ընդունուի իր հրաժարականը (Փունջ, 2042)։ Պատրիարքարանը նոր ընտրութեան հրահանգ կը ղրկէ Կեսարիա (Արեւելեան Մամուլ, 1887, էջ 200)։

1887ին Գէորգ վրդ. Ռուսճուգլեան կը քաշուի իր ծննդավայրը Ֆիլիպէ, գուցէ իր անձնական տկարութեան պատճառով։

1888 Մայիս 7ին Կ. Պոլսոյ վարչութիւնը զայն կը կարգէ առաջնորդ Պուլկարիոյ եւ Արեւելեան Ռումելիի եւ այս առթիւ իրեն կու տայ եպիսկոպոսական վկայական, սակայն Ռուսճուգլեան ո՛չ իրեն առաջարկուած պաշտօնը կ'ստանձնէ եւ ո՛չ ալ եպիսկոպոսական աստիճանը կ'ընդունի եւ կը մնայ մեկուսացած Ֆիլիպէ մինչեւ իր մահը՝ 1893 Սեպտ. 10։ Թաղուած է Ֆիլիպէի Ս. Գէորգ եկեղեցւոյն բակը առընթեր իր եղբօրը՝ Արիստակէս քհ. Ռուսճուգլեանի։

1886–1887 տարիներուն հետեւաբար Կեսարիա կը մնայ առանց առաջնորդի։

Գործերը կը վարէր **Յակոբ վրդ. Աբրահամեան**, իբր Առաջն. Տեղապահ, որ 1887 Փետր.ին կը վախճանի, եւ գաւառական խառն ժողովը Առ. Տեղ. կ'ընտրէ **Գրիգոր վ. Առաքելեանը** (Փունջ, թ. 2035) սակայն նկատելով որ Կ. Պոլիս դարձեալ պիտի չվաւերացնէ այս ընտրութիւնը կ'աճապարեն առաջնորդի ընտրութիւնը կատարելու։

**Տրդատ եպ. Պալեան Թալասցի** (1887-1911).— Երկու ապարդիւն ընտրութիւններէ յետոյ, Գաւ. Ժողովի մեծամասնութեան քուէով Առաջնորդ կ'ընտրուի 1887 Մայիսին Տրդատ վրդ. Պալեան, Երուսաղէմի միաբան վարդապետը։ Ռուսճուգլեանի հրաժարականին ընդունելութենէն յետոյ եռանուն ցանկ եւ ընտրական հրահանգ առանց յղուած ըլլալու Կեսարացիք աճապարեր էին ընտրութիւն կատարելու, ուստի կեդրոնը դժկամակութիւն ցոյց տուաւ վաւերացնելու (Փունջ, թ. 2051-2), սակայն ի վերջոյ հաւանեցաւ (Նոյն, թ. 2054)։ 2-3 ամիս յետոյ կառավարութիւնը կու տայ Պէրաթը։ Տրդատ վրդ. 1887 Սեպտ. 11ին Երուսաղէմէն Կեսարիա կը հասնի եւ պաշտօնի կը ձեռնարկէ։ Իր ժամանումին օրը կատարուած ընդունելութեան միջոցին, Տ. Մարտիրոս Աքհ. Նիկողոսեան, Երուսաղէմի այս վարդապետին նկատմամբ տեսակ մը թերահաւատութիւն կամ արհամարհանք ցոյց կու տայ եւ իբր բարի գալուստի խօսք, բնաբան առնելով Յովհաննէս Մկրտչին՝ պատգամաւորներու միջոցով, բանտէն Յիսուսի ըրած հարցումը՝ «դո՞ւն ես որ գալոցն էիր, եթէ այլում ակնկալցուք» ուղերձ մը կ'ընէ եւ կը ջանայ հակահոսանք մը առաջ բերել։

Տրդատ վրդ. Պալեան, գործնականապէս կը պատասխանէ այս բանդէտ քահանային Կեսարիոյ մէջ ունենալով իբր առաջնորդ պաշտօնավարութիւն մը որ իր արդիւնքներով աննախընթաց էր։ Անիկա իր գործունէութեան անձուկ դաշտին մէջ համեստօրէն եւ առանց աղմուկի գործելով հանդերձ՝ կրցաւ հաստատել իբր փարոս, կրթական հաստատութիւն մը, որմէ ճառագայթող լոյսը թափանցեց նաեւ Կեսարիոյ սահմաններէն շատ հեռուն։ Կեսարացիք իրաւամբ կ'ըսէին «Գայսէրի՝ Գայսէրի օլալը՝ գայմագամլար իչինտէ Համիտ պէյի, առաջնորդլար իչինտէ Տրդատ Առաջնորդը կէօրտի» (Տաքեւ Տարեցոյց, 1925, էջ 340)։

Այս արդարեւ մեծ առաջնորդին անուան եւ յիշատակին առջեւ պէտք է բոլոր Կեսարացիք յարգանքով խոնարհին ո՛չ միայն իբր գոր-

ծունեայ և արժէքաւոր առաջնորդի մը այլ նաև իբր պանծալի մէկ զաւակին իրենց հայրենիքին։ Ան ծնած էր 1850ին Թալաս։ Անդրանիկ զաւակը համեստ ընտանիքի մը, տակաւին շատ պզտիկ իր ծնողքին հետ կը փոխադրուի Զմիւռնիա ուր կ'առնէ իր նախակրթութիւնը, և ապա կը նետուի առեւտրական ասպարէզ և կը գործէ իր հօրը հետ որ կը կոչուէր «Իզմիրլի Սարգիս»։ Հօրը գործերը ձախողելէն յետոյ կ'ստիպուի իբր հաշուակալ ծառայել Գալեօզեան վաճառատան մէջ, ուր հաւատարմաբար երկար ատեն ծառայելէ յետոյ անհամաձայնութեան մը պատճառով կը ձգէ գործը և կ'երթայ Երուսաղէմ (1878) պահ մը առանձնանալու։

Եսայի պատրիարք իրեն հայրենակից այս երիտասարդին քաջ հաշուագիտութենէն օգտուելու համար զայն վանքին հաշուակալ կը կարգէ։ Միջավայրին ազդեցութեամբ հետզհետէ կը միտի կրօնաւորութեան որուն կը հրաւիրէին արդէն իր շուրջինները։ 1880ին սարկաւագ և 1881ին վարդապետ կը ձեռնադրուի Եսայի պատրիարքէն։ 1884–1887ին կը վարէ նաև Աւագ Թարգմանի պաշտօն առանց ձգելու հաշուակալութիւնը։ Իր արագ առաջացումը և գրաւած դիրքը, իր անաչառ ու խիստ նկարագիրը, նախանձ կը գրգռէ և ոմանք ընդ ակամբ նայիլ կ'սկսին, ուստի կը խորհի ինքն վանքէն հեռանալ։

1887ին Կեսարիայէն ուխտի գացող Յովհաննէս Քէհեաեանի, Բարսեղ Սըվաճեանի և Մկրտիչ և Նշան Հալաճեան եղբայրներու ընտանիքները, Տրդատ վրդ.ի գործունէութիւնը և Երուսաղէմի վանքին այն ատենուան քիչ շատ նախանձելի վիճակը տեսնելով կը խորհին զայն Կեսարիոյ առաջնորդ ընտրել տալ իրենց քայքայուած վանքն ալ շէնցնելու յոյսով և իրենց միտադրութիւնը կը յայտնեն Եսայի պատրիարքի, որ չուզելով հանդերձ բաժնուիլ իր հայրենակից ձեռնասունէն, տեղի կու տայ։ Այս կիները Կեսարիա դարձին կը յաջողին իրենց ի նպաստ Տրդատ վրդ.ի թեկնածութեան ջանքին մէջ և անիկա կ'ընտրուի։ Տրդատ վրդ. Կեսարիա հասնելէ անմիջապէս յետոյ իր առաջին գործը կ'ընէ Գաւառ. Ժողովի օրակարգին վրայ դնել դպրոցի մը հիմնարկութեան խնդիրը, որ կը մերժուի, պարզապէս նիւթական միջոցներու չգոյութեան պատճառով, գնահատելով հանդերձ անոր նպատակը։ Ժողովը սակայն զինքը ազատ կը թողու վանքին մէջ վարժարանը բանալու, պիւտճէն ինքը հոգալու և պատասխանատուութիւնն ալ ինքն ստանձնելու պայմանով։ Տրդատ վրդ. գրաւոր այդ որոշումը ձեռք բերելէ յետոյ, կ'անցնի գրասեղանին գլուխը և թեմի գիւղօրէից թաղականութեանց նամակներ կը գրէ որ «իրենց դպրոցին յառաջադէմ, քաջառողջ և աղքատիկ աշակերտներէն մէկը ընտրելով, ընդհուպ Ս. Կարապետի վանքը ղրկեն, հոն բացուելիք վարժարանին մէջ ձրի ուսում և կրթութիւն ստանալու համար»։

1888 Մայիս 9ին կէսօրին, Տրդատ վրդ. իր հետը ունենալով իր քարտուղար Յարութիւն Նշանեանը, և Կեսարիոյ Կիւմշեան վարժարանի տնօրէն Երուանդ Երկաթը վանք կ'երթայ։ Հետեւեալ օրը, Մայիս 10, Դշ. մատակարար Գրիգոր վրդ. Առաքելեանի, Նշանեան Յարութիւնի և Երկաթ Երուանդի և միակ ուսուցիչ՝ Դանիէլ Նշանեանի ընկերակցութեամբ և շրջապատուած 16 ժառանգաւոր աշակերտներով, կ'ելլէ վանքի Ճեմարան կոչուած յարկաբաժինը, կ'օրհնէ և հարեւանցի քննութեամբ մը, 16 աշակերտները, Ա. Բ. Գ. երեք կար-



գերու կը բաժնէ և կ'իջնէ առաջնորդարան։

Նոյն օրն իսկ դասաւանդութեան կ'սկսին պատրաստ դասագիրքերով։ Շատ պարզ և անշուք սկզբնաւորութիւն մը ունեցող այս վարժարանը, պիտի ըլլար Փոքր Ասիոյ համար ընդհանրապէս և Կեսարիոյ համար մասնաւորապէս, փարոս մը, որ 27 տարիներ կրթութիւն և ուսում պիտի տար հարիւրաւոր պատանիներու։

Այս մեծ ու կենսական գործով գրեթէ գրաւուած, իր լաւագոյնը՝ անոր տրամադրելով հանդերձ չանտեսեց նաև իր միւս պարտականութիւնները։ Հաճաղաններու ամբարտաւանութեան դէմ մաքառեցաւ անոնց կլկլակները ժողովներէն դուրս շպրտելով և քիչ ժամանակի մէջ կարգ ու կանոն հաստատեց վարչական գործերու մէջ։ Բարեկարգեց մասնաւորապէս, պէտէլի ակէրիի հաւաքման թնճկոտ հարցը, կազմակերպեց թեմերը, կռուեցաւ անտեղի մսխումներու և ցուցամոլութեանց դէմ և չարունակ յորդորեց ժողովուրդը ըլլալ խնայասէր և տնտեսապէս զարգանալ։ Զվարանեցաւ դատապարտել ինչ որ յոռի էր և քաջալերել ինչ որ լաւ էր։

Ս. Կարապետի վանքը անշքացած էր, ուխտաւորներու սենեակները՝ կքելու մօտ էին, Խաչ Պաղչէն, իր ծառերէն մերկացած, խոպանացած էր, Պայըր Պաղը, արտերը՝ անցան, բանջարեղինաց պարտէզը՝ անջրդի, ջաղացքները փլած փլփլած էին։ Տրդատ վրդ. մշակել տուաւ վանքին արտերը, պարտէզները և պտղանոցները, նորոգել՝ ջաղացքները, տնկեց՝ հազարաւոր բարտիներ, թթենիներ, շէնցուց փարախը, գնեց կովեր, բազմապատկեց լուծքը և վանքին մատակարարութիւնը յանձնեց նախ Թալասցի Պետրոս վրդ. Պալեանի(1) և անոր մահէն վերջ Պաղտասար Աճէմեանի(2)։

1888ին, միաբաններու թաղի վերի մասին սենեակները իրարու միացնելով, նորոգելով, ընդարձակելով՝ հաստատեց ժառանգաւորաց Վարժարանը հոն։

1890ին ի հիմանէ նորոգեց Հաճըն թաղը և մասնաւոր հոգածութեան առարկայ ըրաւ միւս թաղերը։ 1900ին, հանգ. Յակոբ եպիսկոպոսէն շինուած, Նոր Թաղի դիմացի ահագին ժայռերուն վրայ հաստատեց Կեսարիոյ Թաղը, 14 սքանչելի և ընդարձակ սենեակներով, ու տակը ընդարձակ կառատունով և հիւանդանոցով, 1903ին, հիւսիսային կողմը, Ս. Խաչ լերան լանջքին Կեսարացի վաճառականներու օժանդակութեամբ բարձրացուց վարժարանի համար հոյակապ շինուածք մը, 140 կանգուն երկայնութեամբ և 56 կանգուն լայնութեամբ, ճիշդ վանքին տարածութեանը չափ և քիչ մըն ալ աւելի։ Վարժարանին կից հաստատեց նաև մատենադարան-թանգարան մը, ուր հաւաքեց իբր 160 ձեռագիր և 900 տպագիր գիրք և այլ հնութիւններ։

Տրդատ եպ. ձմեռը կ'անցընէր Կեսարիա, գարնան՝ հովուական այցելութեան կ'ելլէր և Յուլիսի սկիզբները կը փութար Ս. Կարա-

(1) Ձեռնադրուած 1881ին Երուսաղէմ, 1885–86 տեսուչ Դամասկոսի և 1886–87 տեսուչ Ս. Փրկչի։ 1887ին Տրդատ եպ. Պալեանի հետ Կեսարիա կու գայ։ Փոխ. վանահայր եղած է։ 1895 Փետր. 14ին յանկարծամահ եղաւ։

(2) Յետոյ Սարգիս վրդ. Աճէմեան և ապա եպիսկոպոս (1857–1926 Հոկտ. 12†)։

պետ ներկայ ըլլալու համար վարժարանին քննութիւններուն։

Տրդատ եպ. հեղինակութիւն ունէր կառավարութեան առջև և իր ձայնը կշիռ ունէր Մէճլիսի Իտարէի մէջ, վասնզի քաջ տեղեակ էր Թուրքերէնի և օրէնքներուն։

Իր գործնական ոգին, մեծ ձեռներէցութիւնը, ճարտարութիւնը և մանաւանդ խոհականութիւնը, միացած իր պարզ կեանքին, խիստ ու անաչառ նկարագրին և պատկառելի երեւոյթին, խստամբերութեան, աշխատասիրութեան, շինարարութեան և միանգամայն ձեռնհասութեան, զինքը շուտով դարձուցին Հայ եկեղեցականութեան ամէնէն կարկառուն դէմքերէն մին։ 1892ին Խրիմեանի ընտրութեան առեն Էջմիածնի Համազգային ժողովին մասնակցելու համար երբ Կովկաս գնաց, անցաւ Կ. Պոլիսէն և մայրաքաղաքին մէջ Կեսարացի վաճառական դասուն հետ մօտէն շփում ունեցաւ։ Էջմիածինէն դարձին (1892 Օգոստոս) Մաղնիսա իր պարագաներուն այցելելէ յետոյ երբ դարձաւ Կ. Պոլիս, վարանում մը ունեցաւ և չուզեց դառնալ Կեսարիա, վասնզի Փոքր Հայքի խնդիրը ծայր տուած էր, և ինքն խոհեմ և հեռատես մարդ՝ կը նախատեսէր անելը և Անատոլուի վրայ կուտակուող սև ամպերը։ Ուստի հրաժարեցաւ (Փունջ, 2321) սակայն կեդրոնը մերժեց։ Տրդատ վրդ. 7-8 ամիս Կ. Պոլիս յապաղելէ յետոյ 1893 Մայիս 21ին Ընկիւրիւի ճամբով մեկնեցաւ Կեսարիա։ Յաջորդ տարին, 1894 Փետր.ին կեդրոնի հրահանգով գնաց Եօզղատ, վասնզի Ժիրայրի ձերբակալութեան հետեւանօք հարիւրաւոր Հայեր բանտարկուած էին, և արտասովոր դատարան մը կ'զբաղէր, անոնց հարցաքննութեամբ։ Այս առթիւ հոն կը մնայ երեք ամիս։ Իր հոն գտնուած առենը 15 Մարտ 1894ին մահապատիժի կ'ենթարկուի Ժիրայր։ Տրդատ եպ. Եօզղատի մէջ յեղափոխութիւնը դատապարտող քարոզ մը տուած՝ և Ժիրայրի՝ խոստովանիլ և հաղորդութիւն առնել մերժած ըլլալուն համար ինքն ալ թաղման կարգ կատարել մերժած ըլլալը, դժբախտաբար չարաչար շահագործուած են, փոխանակ գնահատուելու, իբր ճարտարութիւն մը։

Թուրք և Հայ յարաբերութիւններու ստացած նոր վիճակը արդարև սկսած էր դժուար դիրքի մատնել բոլոր գաւառներու առաջնորդներու շարքին նաև Կեսարիայինը, քանի որ այս քաղաքը առաջին կայանը եղած էր Հայ յեղափոխութեան։ Տրդատ եպ. հեռու յեղափոխական գաղափարներէ, նոյնիսկ ասոր համար մեղադրուած, կառավարութեան առջև չմնաց ամբասիր, վասնզի միշտ ազդու կերպով բողոքած է անիրաւութեանց դէմ։ 1895ի ջարդէն յետոյ կառավարիչը և Թուրքերը իր հեռացումը պահանջեցին վասնզի անիկա նախատեսելով սպառնացող վտանգը պաշար շտեմարանած և բազմաթիւ ընտանիքներ վանք փոխադրած էր և երբ Թուրքերը հոն խուժած էին ողոքական խօսքերով ճամբու դրած էր։ Տրդատ եպս. ստիպուեցաւ Կ. Պոլիս գալ և արդարացնել ինքզինքն (Աբրահամ Ֆրէնկեան, Բիւզանդիոն, Թ. 4209)։

Տրդատ վրդ. որ 1890 Փետր.ի արդէն եպիսկոպոսական վկայական ստացած էր, 25 Յունիս 1898ին միաձայնութեամբ երկրորդ վկայական մը ստացաւ (Բիւզանդիոն, Թ. 526) և 24 Ապրիլ 1899ին Կեսարիայէն ճամբայ ելաւ (Նոյն, Թ. 775) և գնաց Էջմիածին և 27 Մայիսին ձեռնադրուեցաւ եպիսկոպոս։ Խրիմեան զինքը պատուեց արտասովոր



կերպով և զայն մատնանիշ ըրաւ իր օծման օրը իբր յարմարագոյն ընտրելի Կիլիկիոյ Կաթողիկոսութեան, որուն համար արդարև առաւելագոյն քուէն ստացաւ 1902ին, սակայն կառավարութիւնը իր անունը վերցանուն ցանկէն ջնջեց։ Էջմիածինէն Կ. Պոլիս եկաւ և հոն ստացաւ Ծայրագոյն վարդապետութեան աստիճանը Օրմանեան պատրիարքէն, վասնզի եպիսկոպոս ձեռնադրուած էր առանց այդ աստիճանը ունենալու։ Տրդատ եպ. յետոյ դարձաւ իր աթոռը և դարձեալ նուիրուեցաւ իր աշխատութիւններուն։ Այսպէս աշխոյժ, գործունեայ և ճարպիկ այս եկեղեցականը 23 տարի կատարեալ ձեռնհասութեամբ վարեց Կեսարիոյ առաջնորդութիւնը, միշտ գնահատուելով իր վիճակայիններէն և բոլոր ազգէն, նոյնպէս նաև Կեսարիոյ Թուրքերէն, որոնք 1908ին Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութեան օրերուն ինչպէս տեսանք (տես էջ 623-4) միայն իրեն վստահեցան կառավարական պաշտօնատանց բանալիները։

Տրդատ եպ. Պալեան իր խոհականութեամբ այդ դժուարին և կերպով մը գրգռիչ դիրքին մէջէն կրցաւ ելլել։ Նոյնպէս Կեսարիոյ Հայոց թանկագին ծառայութիւն մատոյց 1909ի Մարտի յետադիմական շարժման առեն Կեսարիոյ սպառնացող վտանգին առաջքն առնելով կառավարիչ Ճէմալ պէյի շնորհիւ։ Սակայն Սահմանադրութեան հռչակումէն յետոյ մթնոլորտը փոխուած էր և սխալ ըմբռնուած ազատութիւնը՝ կարծես սանձարձակութեանց մղած էր անկարգ ու աննոպայ տարրերը, որոնք համբաւներու դէմ կը կռուէին յաճախ իրենց աննշան գոյութեան կարեւորութիւն մը տալու համար։ Հազիւ թէ Սահմանադրութիւնը հռչակուած, Տրդատ եպ. իր դէմը գտաւ այդ տարրերը որոնք գործի վրայ գտնուելու եռանդով այս արժէքաւոր եկեղեցականը տապալելու կամ վատահամբաւելու ապաշնորհ աշխատանքին լծուեցան։ Առաջին ազդանշանը տուաւ մի ոմն Յովհակիմ Գուլումճեան — ապահովաբար համբաւի մուրացկան մը — որ Հուզուգու Ումումիյէի մէջ ամբաստանեց զայն իբր կաշառակեր և զեղծանող, երբ քիչ առաջ ամբողջ քաղաքը զինքն հռչակեր էր իբր անբասիր և անկաշառ մարդ։ Տրդատ եպ. հրապարակաւ բողոքեց այս ամբաստանութեան դէմ (20 Հոկտ. 1908, Բիւզանդիոն, Թ. 3678)։ 1909 Յունուար 27ին պոռթկացող իսլամական յետաշրջական շարժումը (տես էջ 624-5) կառավարիչ Ճէմալ պէյի դէմ, Փետր. 6ի Կ. Պոլիսէն հասնող զօրքը զսպեց։

Երեք օր յետոյ եկաւ հասաւ Ընկիւրիւի կուսակալը Նազիմ պէյ, քննութեան համար, սակայն կողմնակցական ոգի ցոյց տուաւ։ Տրդատ եպ. ազդու կերպով բողոքեց։ Կուսակալը իրմէ վրէժ լուծելու համար Հայոց առաջնորդն ալ կ'ամբաստանէ իբր ժողովուրդը գրգռող և յանկարծ Շէյխ Իպրահիմի այնքան ձգձգուած դատը (տես վերը, էջ 625) որուն իբր վկայ Կեսարիոյ մէջ կոչուած էր Տրդատ եպ. (21 Փետր. 1909) (Բիւզ. 3777) և չէր լսուած, այս անգամ Զօրումի մէջ վերստին ձեռք կ'առնուի և Տրդատ եպ. 6 Մարտ 1910ին կոչնագիր կ'ստանայ հոն ներկայանալու։ Տրդատ եպ. ըստ ընկալեալ սովորութեան պահանջելով որ կոչնագիրը Պատրիարքարանի միջոցաւ հաղորդուի, զայն ետ կը ղրկէ, և առանց սպասելու դատարանի վճիռին՝ կը մեկնի Կ. Պոլիս (Հայրենիք, 1632)։

Այս օրերուն, իսլամներու օրինակը վարակիչ բնոյթ մը կ'ստանայ և Հայերու մէջ ալ կը տեսնուին անկարգութեանց հակումներ։ Առաջին

յեղափոխութիւնը կ'ակսի Ս. Կարապետի վարժարանին մէջ ուսանողութեան կողմէ (Բիւզանդիոն, թ. 3777) անշուշտ արտաքին թելադրութեամբ։ Տրդատ եպ. զգալով գալոց փոթորիկները 16 Փետր. 1909ին վանքին վարժարանին դեկը կը յանձնէ Գաւ. Ժողովին և կը ներկակայացնէ վարժարանին 20 տարուան հաշիւները (Բիւզանդիոն, թ. 3772) և ինքն կը հրաժարի (Նոյն, թ. 3777)։ Գաւառ. Ժողովը սակայն չ'ընդունիր և կը խնդրէ որ շարունակէ իր պաշտօնը։ Սակայն վերահաս 31 Մարտի յետադիմական շարժումը և Կեսարիոյ Հայոց Ֆիզիքական գոյութեան սպառնացող վտանգը ժամանակի մը համար մոռցնել կու տայ ծայր տուող այս տագնապը, որ գրեթէ մէկ տարի թաղուած կը մնայ, սակայն հազիւ թէ բնականոն կեանքը սկսած արդէն ծայր կու տան դժգոհութիւնները Գաւ. Ժողովին դէմ, որ կ'ուզեն հրաժարեցնել, և կը յաջողին ալ։ Տրդատ եպ. ինքն ալ կը կրկնէ իր հրաժարականը որ կը ներկայացնէ Կեսարիոյ Քաղ. Ժողովին և Կ. Պոլսոյ Պատրիարքարանին։ Քաղ. Ժողովը կ'ընդունի և առանց Պատրիարքարանին հրահանգին սպասելու Առաջ. Տեղապահ կ'ընտրէ՝

**Գէորգ վրդ. Պօյաճեանը**, Ս. Դանիէլի փոխ-վանահայրը, որ 5 ամիս պաշտօն կը վարէ։ Տրդատ եպ. այդ միջոցին կը քաշուի Մայրեկեղեցիի սենեակներէն մէկուն մէջ և հեռուէն ականատես կ'ըլլայ իր ձեռակերտ Ս. Կարապետի վարժարանի քանդումին։ Այս միջոցին կը կատարուի Գաւառ. Ժողովի մը ընտրութիւնը։ Պատրիարքարանը սակայն յանդիմանագիրով մը չեղեալ կը նկատէ Տեղապահին ընտրութիւնը իբր ապօրէն և Տրդատ եպ.ի կը յանձնարարէ իր պաշտօնը շարունակել։ Տրդատ եպ. կը համակերպի, սակայն պայման կը դնէ ապօրէն Տեղապահի օրով կատարուած ընտրութիւնը բեկանել և նոր ընտրութեան հրահանգ տալ։ Գաւ. Քաղ. Ժողովը կը հակառակի իր այս պահանջին, այսպէս կիրքերը կը բորբոքին։ Քաղ. Ժողովը կ'ուզէր Ժողովը գումարել և Առ.ը կը հակառակէր։ Ի վերջոյ Տրդատ եպ. ի սէր համերաշխութեան Առ. փոխանորդին թողլով Ժողովին բացումը ինքն վանք կ'երթայ վարժարանին գործերը կարգադրելու համար, մտադրած ըլլալով Կ. Պոլիս մեկնիլ (Հայրենիք, թ. 1632)։

Գաւ. Ժողովի գումարումը շղթայազերծ կ'ընէ կիրքերը և իմաստակները գործի կը լծուին և ըստ առածին թէ՝ տխմարներ միշտ կը գտնեն տխմարագոյններ իրենց վրայ հիացող, 7 Փետր. 1910ին Հայկեան վարժարանին մէջ կը գումարեն միթինկ մը Առաջնորդին դէմ (Բիւզ. 4061)։ Տրդատ եպ. տեսնելով որ այլեւս անկարելի է խաղաղ պաշտօնավարութիւն մը ունենալ արտաքին և ներքին դժուարութիւններու առջև, վանքը յանձնելով Տ. Սմբատ վրդ. Սալպաշեանի և Հոգաբարձութեան մը, կը մեկնի 22 Փետ. 1910ին Կ. Պոլիս (Բիւզանդիոն, 4071) առժամապէս, կեդր. Վարչութիւնը լուսաբանելու և իրեն դէմ հանուած ամբաստանութիւնները ջրելու համար։ Այս առթիւ կու տայ Ս. Կարապետի հաշիւները և գոյքերու փոխանցումը կը կատարէ, և Տ. Մարտիրոս քհ. Զարդարեանը փոխանորդ կը կարգէ։

Մեկնելէ առաջ Ս. Աստուածածին եկեղեցիին մէջ հրաժեշտի քարոզ մը կու տայ և կ'ըսէ թէ որոնք որ առնելիք մը ունին իրմէ անհատապէս և կամ ազգովին թող դիմեն իրեն և մեկնելէ առաջ պատրաստ է վճարել ցյետին լուման (Բիւզանդիոն, թ. 4072)։ Տրդատ եպ. որ այս յայտարարութիւնները կ'ընէր նշանակելի է որ 23 տարի պաշ-





ՏՐԴԱՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԱԼԵԱՆ
ԲԱԶՄԱՐԴԻՒՆ ԱՌԱՋՆՈՐԴ ԿԵՍԱՐԻՈՅ

տօնավարած էր ամսական 5 ոսկի աննշան թոշակով և 1000 ոսկի պահանջ ունէր մեկնած ատեն։ Իր պաշտօնավարութեան ընթացքին շինած էր 18 դպրոց և կառուցած 2 և նորոգած՝ 3 եկեղեցիներ, առանց կայս. հրաման առնելու (Հայրենիք, թ. 1632)։

Տրդատ եպ. որ Կ. Պոլիս եկած էր սպասելու համար կառավարութեան իր դէմ յարուցած դատին ելքին, հազիւ Կ. Պոլիս հասած՝ Տրապիզոնի Գաւ. Ժողովէն ընտրուեցաւ առաջնորդ սակայն մերժեց։ Կեդր. Վարչութիւնը օգտուելու համար իր փորձառութենէն և վարչագիտութենէն կ'որոշէ զինքը ղրկել Երուսաղէմ իբր Փոխանորդ Տեղապահին կամ Խորհրդական, վասնզի Տեղապահ Դանիէլ Ծվրդ. Յակոբեան էջմիածին պիտի մեկնէր եպիսկոպոս ձեռնադրուելու համար և Պարգև Փափազեան՝ կեդրոնի լիազօր Ներկայացուցիչը և Տեղապահին օգնականը, 1910 Յունուար 29էն Մայիս Երուսաղէմ մնալով իր գործը աւարտած կը նկատէր և Կ. Պոլիս պիտի դառնար և զիրենք փոխանակելու համար կարեւոր էր դիրք ունեցող մէկը ունենալ հոն։ Տրդատ եպ. 1910 Ապրիլ 20ին կը հասնի Երուսաղէմ և Դանիէլ Ծվրդ. Յակոբեան անմիջապէս կը մեկնի (10 Մայիս 1910)։ Ինքն Տեղապահի փոխանորդութեան հետ Ելեւմտից Տեսչութիւնն ալ կ'ստանձնէ։ Այս շրջանին ծերունի Յարութիւն պատրիարք Վեհապետեան կը վախճանի (5 Հոկտ. 1910) և առանց Տեղապահի նոր ընտրութեան Դանիէլ եպ. Յակոբեան կը հրաւիրուի իր պաշտօնը շարունակել, ուստի շուտով հրահանգ կը տրուի Երուսաղէմ դառնալ։ Դանիէլ Արքեպ. Յակոբեան, որ 19 Սեպտ.ին արդէն ձեռնադրուած էր, Կ. Պոլսոյ ճամբով փութաց Երուսաղէմ ուր հասաւ Հոկտեմբերի վերջերը։ Հետեւաբար Տրդատ եպ. Պալեանի ներկայութիւնը աւելորդ դարձաւ, մանաւանդ որ ինքն ալ յուսախաբ եղած էր կրքոտ և պառակտուած այդ միջավայրէն, ուստի թողուց Երուսաղէմը։

Իր Երուսաղէմ մեկնած ատեն, 1910 Ապրիլին Կ. Պոլսոյ վարչութիւնը Կեսարիա հրահանգ տուած էր Գաւ. Ժողովի նոր ընտրութիւններ կատարել։ Այդ ընտրութիւնները եղած էին կուսակցական տարրերու յաղթանակով։ Ասոնք իրենց առաջին գործը ըրած էին 2ի դէմ 19 ձայնով (Կեսարիոյ Գաւ. երեսփոխաններու թիւը 35 է) անվստահութեան քուէ տալ Տրդատ եպ.ի (1910 Սեպ.)։ Սակայն ասով հանդերձ 1911ի սկիզբը, երբ Տրդատ եպ. Երուսաղէմէն հեռացաւ վախնալով որ Կ. Պոլսոյ վարչութիւնը զայն իր աթոռը կը դարձնէ, իբր թէ իր հրաժարականը լրացեալ գործողութիւն մը ըլլար 1911 Փետր. 11ին պահանջեցին Տեղապահի ընտրութիւն մինչ Առաջ. փոխանորդը՝ Տ. Մարտիրոս քհ. և բազմաթիւ անհատներ հեռագրով իր Կեսարիա վերադարձը կը խնդրէին (Ազատամարտ, թ. 314)։ Տրդատ եպ. Պալեան չուզելով մաքառիլ քաշուեցաւ իր հօրենական տունը՝ Մանիսա (1911 Փետր.) և ներկայացուց իր վերջնական հրաժարականը Կեսարիոյ առաջնորդութենէն, որ Ազգ. Վարչութիւնը վարանեցաւ ընդունիլ երկար ատեն, այլ սակայն ընդունեց վերջապէս երբ համոզուեցաւ թէ հնար չէր անոր վերադարձը, որ անկարելի դարձնելու համար, Կեսարիոյ Գաւ. Ժողովի անդամները, 11 Յունիս 1911ին իրեն դէմ ամբաստանութիւններ կը կուտակէին աններելի ապերախտութեամբ մը և նոյնիսկ զանոնք քննելու համար վեց հոգիէ բաղկացեալ յանձնախումբ մըն ալ կը կազմէին (Ազատամարտ, թ. 324)։ Մարդ միայն պըժ-



գանքով կրնայ կարդալ այդ ամբաստանութիւնները որոնք իրենց պաշտօնին բարձրութեան անգիտակ և ստորին կիրքերէ մղուած այդ մարդիկը կը նետէին եկեղեցականի մը ճակտին որ ապահովաբար շատ վեր կը մնար անոնցմէ։ Անոնք կ'ամբաստանէին Տրդատ եպ.ը 1. կրթականին մէջ՝ իբր անտարբեր ժողովուրդին իրական զարգացման, միաժամանակ ստորին միջոցներով հակազդող և ջլատող կրթական ձեռնարկները, 2. կրօնականին մէջ՝ իբր պաշտպան և քաջալերող անբարոյական և զեղծարար քահանաներու՝ միաժամանակ ինքն ալ ժամերգութիւնները խանգարող և եկեղեցին գայթակղալից կռիւներու թատերավայր դարձնող անպատկառ կեղծ եկեղեցական մը, 3. վարչականին մէջ՝ իբր ազգային ներքին խնդիրներու և դիմումներու անտեսող և բացարձակ թշնամի Սահմանադրութեան, հանդէպ կառավարութեան՝ միակ ու միակ պաշտպան իր անձին, փառքի և խաղաղութեան ժամանակ՝ առաջնորդ և պետ ազգին, վտանգի պահուն իբր դաւաճան՝ կա՛մ հրաժարած կամ գոնէ հիւանդ (Ազատամարտ, թ. 324)։

Այս իսկապէս ամօթալի արարքը — արատ մը Կեսարիոյ Հայութեան համար — անտարբեր թողուց Տրդատ եպ.ը, որ հակառակ իր ջանքերուն և ծառայութիւններուն ցոյց տրուած այս ապերախտ ընթացքը տեսնելէ յետոյ դարձեալ չվարանեցաւ ազգին ծառայելէ այս անգամ ալ ուրիշ մարզի մը մէջ, հեռու վարչականէն, ասով խարանելով իր անպատկառ հակառակորդները որոնք ոչ միայն չէին հանդուրժեր իր Կեսարիոյ դարձին այլ չէին ուզեր որ ուրիշ տեղ մը գոնէ օգտակարապէս ծառայէ և ասոր համար երբ տեսած էին իր անունը Երուսաղէմի պատրիարքական ընտրելեաց եօթանուն և եռանուն ցանկերուն մէջ (1911 Հոկտ. 14ի ընտրութեան ատեն) փութացեր էին հեռագրով բողոքել, Կ. Պոլսոյ Ընդհ. Ժողովին, «իր վրայ ծանրացող ամբաստանութիւններէն եւ իր ժամանակի հաշիւներէն չարդարացած Տրդատ եպ.ի կարեւոր պաշտօնի մը կոչուելուն դէմ» (Ատեն. Ազգ. Ժողովոյ. 1911–12 շրջան էջ 424)։ Ի յարգանս յիշատակին Գէորգ Ասլանեանի, Քաղ. Ժողովոյ Ատենապետին, պէտք է ըսել թէ այս ապերասան և կատարելապէս ապաշնորհ և ապերախտ ընթացքին դէմ, քաջութիւնը ունեցած է ծառանալու «յանուն վարչութեան» յայտարարելով թէ «եթէ Պալեան Ս.ի նկատմամբ եկած հեռագիրը նկատողութեան պիտի առնուի անոր հակառակ տեղեկագիրներ ունինք, պէտք է անոնք ալ քննուին» (Նոյն, 430)։

Տրդատ եպ. Պալեան՝ Մանիսա մնաց բոլորովին մեկուսացած (1911–1922) տասը տարի, նուիրելով ինքզինքը մատենագրական և բանասիրական պրպտումներու։ Իր այս խաղաղ ու անդորր կեանքը կը խանգարուի 1922 Օգոստոսին երբ Յունական բանակը Քէմալական զօրքերու գրոհին չտոկալով կ'ընկրկի և կը նահանջէ։ 1922 Սեպտ.ի սկիզբը Մաղնիսայէն Իզմիր կ'իջնէ եղբօրը մէկ տունը բնակելու համար, կարծելով որ Մուսթաֆա Քէմալ հոն գալու իսկ ըլլայ, Իզմիրի մէջ ոևէ դէպք չի պատահիր։ Սակայն ամէնէն զարհուրելի նախճիրը դժբախտաբար վերապահուած էր Իզմիրի։ 9 Սեպտ. 1922ին Քէմալական բանակը Իզմիր մտնելով սոսկալի կոտորած մը ըրաւ և բոլոր քաղաքը մոխրակոյտի մը վերածեց։

Տրդատ եպ. Պալեան իր մէկ նամակին մէջ (տես ՀԱ. 1923 էջ 551) կ'ըսէ թէ «Մեր մեծումը պարապի ելաւ. Մուսթաֆա Քէմալի եւ իր անօրէն զօրքերու վայրագութեան միջոցաւ ամենամեծ հալածումի, կողոպուտի ենթարկ-

ւեցայ, ինչպէս նաեւ բոլոր Հայերը: Իզմիրի մէջ տառապանքը մեծ էր, ամբողջ Հայոց թաղը կրակի տուին Քեմալի զօրքերը, կարգը երբ մեր թաղին եկաւ, ինչպէս ուրիշ տուներու կ'ընէին, երբ չորս օթօմօպիլ բերին տունիս առջեւ, եւ իմ ամբողջ գոյքերս զորս բերած էի Մաղնիսայէն, դրամներս, նամակադրոշմի մեծ հաւաքածոյս, 30 տարիներէ ի վեր աշխատած եւ ժողոված ազգագրական հաւաքածոյներս ու ուսումնասիրութիւններս, պարսկական երկու թանկագին գորգերս, վեղարներս, փիլոններս, փակեղներս, եպիսկոպոսական պնակէս, խաչ եւ ամբողջ հագուստներս եւ զգեստեղէններս, թղթեայ եւ մագաղաթեայ հին ձեռագիր եւ 600 հատ գրադարանիս տպագիր գիրքերս, եղբօրս 40 պարկ չամիչը եւ տունի գոյքերը եւայլն այդ օթօմօպիլներու մէջ լեցնելով առին տարին, եւ անմիջապէս ալ տունին մէկ ծայրէն կրակ տուին, ինչպէս ըսի՝ կ'ընէին ուրիշ Հայ տուներու ալ, որուն վրայ ստիպուեցայ առանց տեսնուելու տունէն փախչիլ աղտոտ միակ վերարկուով մը. այսպէս փողոցէ փողոց քանի մը օրեր ադին անդին միայն հաց ուտելով թափառելէ յետոյ, վերջապէս քարափի վրայ տուն մը մտանք հանգստանալու համար. տասը տասնեւհինգ օր վերջը շատ դժուարութեամբ յունական շոգենաւ մը մտանք եւ հասանք Աթէնք, թէեւ օր մըն ալ զիս բանտարկեցին. Իզմիր:

Այժմ (29 Յունուար, 1923 է թուականը նամակին) երեք ամիսներէ ի վեր կը մնամ Աթէնք թշուառ վիճակով. իմ այս վիճակս լսելով Երուսաղէմէն, Կ. Պոլիսէն, Բարիզէն, Եգիպտոսէն օգնութեան փոքր ինչ նպաստներ ղրկուած են, որով այժմ քիչ շատ հանգստութիւն մը ունեցայ. չպիտի մոռնամ այն բարիքները որ կ'ըլլան ինծի: Աթէնքի Հայոց եկեղեցւոյն մէկ սենեակին մէջ այժմ օրերս կ'անցընեմ խեղճ քրոջս հետ, որ կերակուրս կը պատրաստէ, որովհետեւ եղբայրս Իզմիրի մէջ կորսուեցաւ, իր մէկ փեսայով»:

*Ծերունի եպիսկոպոսը սակայն չկրցաւ տոկալ այս խեղճ կեանքին: Տարագիրներու մէջ տարածուած թիֆիւսի համաճարակի մը զոհ եղաւ նախ 30 Յունիս 1923ին իր քոյրը: Ինքն ալ վարակուած ըլլալով նոյն օրն իսկ փոխադրուեցաւ Բալթիսթայի պետական հիւանդանոցը, բայց անօգուտ:*

*Տրդատ եպ. Պալեան վախճանեցաւ 2 Յուլիս 1923ին, և թաղուեցաւ Աթէնքի հասարակաց գերեզմանատունը, յուղարկաւոր ունենալով միայն չորս հոգի, որոնցմէ մին Վահան Թէքէեան, որ տեսած՝ Տրդատ եպ.ի գործը Կեսարիոյ մէջ, քանի մը բառերով իր ցաւը կը յայտնէ այս եկեղեցականին դագաղին վրայ:*

*1928 Սեպտեմբերին Կեսարիոյ այս բազմարդիւն և անմոռանալի և իրաւամբ «մեծ» կոչման արժանի առաջնորդին աճիւնները Աթէնքէն փոխադրուեցան Երուսաղէմ և ամփոփուեցան Սիոնի գերեզմանատան մէջ մասնաւոր հանդիսութեամբ մը:*

*Տրդատ եպ. Պալեան թէև չէր ստացած բարձրագոյն կրթութիւն, բայց մեծ սիրով ծառայած է նաև Հայ դպրութեան, գէթ իբր բանահաւաք, իբր ստաղձ և նիւթ հաւաքող անփոխարինելի ծառայութիւն մատուցանելով Հայ ազգին: Դժբախտաբար իր տարիներու աշխատութեանց արդիւնքը զոհ գնաց Թրքական վայրագութեան և վանտալականութեան:*

*Բազմահմուտ բանասէր Հ. Ներսէս Ակինեան, կ'ըսէ թէ ան* «բռնըւած հաւաքելու մոլութենէն՝ սիրած է հաւաքել գրքեր, ձեռագիրներ, նամակադրոշմներ, հնութիւններ, ժողովրդեան բերնէն՝ հէքեաթներ, առակներ, երգեր, բառեր, ձեռագիրներէն՝ տաղեր, առակներ, հանելուկներ, սիրած է



կազմել ցուցակներ գրքերու, ձեռագիրներու. միով բանիւ չէ թողուցած աչքէ իր մը, դէպք մը, զոր ուշադրութեան առած եւ արձանագրած չըլլայ» *և շատ իրաւամբ կը յարէ թէ* «ի տես այս հաւաքմանց կը զարմանայ մարդ անոր համբերատար մեղուաջան աշխատասիրութեան վրայ: Ի՜նչպէս կրցած է զուգել առաջնորդական բազմազան զբաղմանց հետ գրականութիւնը» (*ՀԱ.* 1923, 552):

**«Պալեան եղած է հաւաքիչ, առանց գիտական պատրաստութեան,** ամենայն ինչ կատարած է բնական բերմամբ կամ ուրիշներուն օրինակին հետեւելով: Գարեգին Սրուանձտեանցի, Ղ. Փիրղալէմեանի օրինակները ազդած են իր վրայ» (*Հ. Ներսէս Ակինեան, նոյն*):

*Հետեւաբար իր գործերուն մէջ քննական հոգի և գիտական յօրինուածք փնտռել զուր աշխատանք պիտի ըլլար: Սակայն իր աշխատութիւնները առատ նիւթ կը մատակարարեն ապագայ ուսումնասիրութեանց: Ցաւալի է որ իր 40 տարիներու աշխատանքը փճացաւ, միայն փրկուելով անոնք որոնք իր կենդանութեան տպագրած էր: Իր երկասիրութիւններն են հետեւեալները:* 1.— Ս. ԵՐԿԻՐ. Նկարագրութիւն Ս. Երուսաղէմի եւ Սրբազան տեղեաց, *Ա. հտ* 1892: *Այս երկասիրութիւնը ըստ Հ. Ակինեանի ունի հնագիտական արժէք:* 2.— Եկեղեցական միաբանք Ս. Երուսաղէմի (*անտիպ*): *Պատկերազարդ: Հաւանօրէն Աղաւնունի Ս.ի* **«Միաբանք եւ Այցելուք»***ի ձեւով գործ մը:* 3.— Հայ վանօրայք ի Թուրքիա. Մասն Ա. Գաղատիոյ, Սեբաստիոյ եւ Տրապիզոնի կուսակալութեանց մէջ եղած վանօրայք (1914): *Այս տքնաջան գործը մասնակի վերատպութիւնն է այն յօդուածաշարքին որ նոյն խորագրով հրատարակած է Տրդատ եպ. Պալեան* Բիւզանդիոնի *մէջ: Ծրագրած էր որ այս գործը բաղկանար հինգ հատորներէ: Իր սաները իբր մշտնջենական յիշատակ կրնան յաջորդ հատորները հրատարակել վերատեսութեամբ մը* Բիւզանդիոնէն *արտատպելով մնացածները:* 4.— Վիճակ Կեսարիոյ. տեղագրութիւնք եւ տեղեկութիւնք (*անտիպ*): 5.— Ցուցակ Հայերէն Ձեռագրաց ի Թուրքիա, Ա. հատ. Կեսարիոյ վիճակ, *որուն միայն երկու տետրակները՝ Կեսարիոյ Ս. Սարգիս վանքի* (1891) *և Ս. Աստուածածին և Գըրշէհիրի Ս. Գէորգ եկեղեցիներու* (1893) *հրատարակուած են: Իսկ* Լոյս *շաբաթաթերթի մէջ* (1905–6) *Էվէրէկի, Թալասի, Թավլուսունի, Պալակէսի, Նիրզէի, Տարսեախի և Մունճուսունի եկեղեցիներունը: Այս շարքին մէջ էր անշուշտ Ս. Կարապետի վանքին* 160 *ձեռագիրներուն ցուցակը որմէ դիպուածով միայն փրկուած են թ.* 1-44, *որ ղրկած էր* 1922 *Սեպ.ի Հ.* Ամսօրեայի, *խոստանալով յաջորդ մասերն ալ ղրկել: Այս շարքին կը պատկանին նաև* Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Ս. Սիոն եւ Ս. Լուսաւորիչ Եկեղեցեաց ի Մաղնիսա *հատորը, որ մաս կը կազմէր Զմիւռնիոյ վիճակին յատկացեալ հատորին,* (*տպ.* 1898*ին, Իզմիր*): *Տրդատ եպ. Պալեան այս նպատակով ցուցակագրած էր մօտ* 500 *ձեռագիրներ*(1): 6.— Հայերէն հին ձեռագիր Աւետարանք Թ–ԺԵ դար (*12 նմանահանութեամբ*): *Անկէ մաս մը հրատարակուած է* (Բիւզանդիոն, *թ.* 3551, *միայն Թ–ԺԱ դարուց*): 7.— Ցուցակ Հայերէն հին տպագրութեանց 1513–1850, *ուրկէ նմոյշներ հրատարակած է*

(1) *Դարձեալ փափաքելի էր որ իր աշակերտները և համակիրները՝ լրագրաց մէջ ցրուած այս գրութիւնները և Վիէննա, անտիպ մնացած ձեռագիրը իբր շարունակութիւն Ա. և Բ. տետրերուն հրատարակէին:*

Բանասէրի, Արեւելեան Մամուլի, Բիւրակնի, Բիւզանդիոնի և Հ. Ամսօրեայի մէջ։ 8.— Նշանագիրք Հայոց, 1898, Վիէննա, 9.— Հայ Աշուղներ, տպ. 1911-12, Ա. և Բ. հատորներ, յաւելեալ և ճոխացեալ մէկ տպագրութիւնն էր Բիւրակնի մէջ, հրատարակածին որ կարելի չէ եղած լրացնել։ Այս հաւաքման մէջ ամփոփած էր հին և նոր աշուղ-տաղասաց-երգիչներու մնացորդները, քաղելով ձեռագիր և տպագիր գիրքերէն, և տալով կենսագրական տեղեկութիւններ այբուբենական կարգով։ 10.— Փշրանք Հայկական հնոց եւ նորոց, ա. Անտիպ մանր գրուածք, բ. Տեսիլք Գրիգոր Օշականցիի, գ. Ֆիզիգա Պօղոս (կենսագրութիւն և անտիպ գրուածք) դ. Երեք աքսորականներ. Տիւզեան ամիրաներ (Կեսարիոյ անոնց աքսորի կեանքը և նամակները) անտիպ։ 11.— Ինքնակենսագրութիւնը (անտիպ)։ 12.— Առակներ, հայերէն, թուրքերէն, գրաբար և աշխարհաբար, շատերը հաւաքուած հին ձեռագիրներէ (անտիպ)։ 13.— Հէքեաթներ, 120 հատ ծերունիներու բերնէն լսուած (անտիպ)։ 14.— Ժողովրդական Հայկական Առածներ, գրեթէ 5000 հատ (անտիպ)։ 15.— Ժողովրդական Տաճկական Առածներ, գրեթէ 12,000 հատ (անտիպ)։ 16.— Հայկական սովորութիւնք կաղանդի, ծննդեան, նշանտուքի, ամուսնութեան և այլն. Նաև Նախապաշարմունք (անտիպ)։ 17.— Բուսական կենդանական բառեր (անտիպ)։ 18.— Գաւառական բառեր (անտիպ)։ 19.— Բառարան Աշխարհաբարի համար (անտիպ)։

Ասոնցմէ զատ Տրդատ եպ. Պալեան բազմաթիւ պարբերականներու և օրաթերթերու մէջ ունի յօդուածներ, բանասիրական և ազգագրական նիւթերու վրայ։

Ահա մարդ մը որ կրցած է ինքզինքն օգտակար ընծայել թէ՛ իբր Առաջնորդ իր վիճակին և թէ՛ իբր ուսումնասէր իր ազգին։

Իր առաջնորդութեան շրջանը, հակառակ այն սեղմումներուն որոնք Համիտեան կառավարութեան կողմէ ձեռք կ՚առնուէին հանդէպ Հայոց, Կեսարիոյ Հայոց ամէնէն փայլուն շրջանը՝ ոսկի դարն է։

Կեսարիա գաւառներուն մէջ կը փայլէր իր կրթական լաւագոյն հաստատութիւններով և մանաւանդ իր երկրորդական վարժարանով։ Շնորհիւ հաստատամտութեան որ իր բոլոր գործունէութեան հիմը եղած է, կրցած է դժնդակ պարագաներուն մէջ կորովով և ողջմտութեամբ շարունակելու իր պաշտօնը և մատակարարելու գրեթէ իր անհատական ջանքերով բարձրագոյն վարժարան մը(1)։

---

(1) Իր կենսագրութեան համար որ կարելի եղածին չափ լրիւ տալու աշխատած եմ առանց մանրամասնութիւններու, օգտուած եմ Հ. Ներսէս Ակինեանէ (ՀԱ. 1923, 548-558) Մ. Ասատուրէ (Վերջին Լուր, թ. 2847-49) Ա. Ալպօյաճեանէ (նոյն, թ. 2858-9), Յ. Տարագիրէ (Արեւ, թ. 176), Հ. Ուղուրլեանէ և Կ. Աբրահամեանէ (Ընդ. Օր., 1929, 221-262) և Մկրտիչ եպ. Աղաւնունիէ (Միաբանք եւ Այցելուք, 510) և ուրիշներէ։ Իր գործունէութեան պիտի անդրադառնամ նաև հատորիս ուրիշ մասերուն (մանաւորապէս կրթականին և հասարակական շարժման) մէջ։ Ջերմապէս փափաքելի է որ իր գրական վաստակներուն մանրամասն վերլուծումով իր լիակատար կեանքն ալ գիրի առնել տալու փոյթն ունենային իրեն հիմնած կրթական հաստատութեան երախտագէտ սաները։



**Յ. Մարտիրոս Քհ. Զարդարեան.—** (1911-1912) Տրդատ եպ. Պալեան 1910ին մեկնած ատեն Առաջ. Փոխանորդի պաշտօն վարող այս քահանան իր հրաժարելէն յետոյ Գաւառ. վարչութեան որոշումով Առ. Տեղապահ ընտրուեցաւ, մինչ նոյն օրերուն Կ. Պոլսոյ կեդրոնը Տեղապահ նշանակած էր Վահան Ծվրդ. Յակոբեանը (Բիւզանդիոն, թ. 4501) որ չկրցաւ երթալ Կեսարիա և այս քահանան վարեց գործերը մինչև Խոսրով եպ. Պէհրիկեանի ընտրութիւնը։ Տ. Մարտիրոս քհ. ծնած էր 1841 Փետրուարին Մունճուսուն, աշխարհական անուամբ Նոյն, ուսած Երուսաղէմի Ժառանգաւորաց վարժարանը, ուսուցչական պաշտօն վարած 25 տարի. 5 Սեպ. 1870ին ձեռնադրուած է Ուլնեցի Սարգիս եպ.էն։ Երկար ատեն Առաջն. փոխանորդութիւն վարած։ Ծաղկեայ փիլոն կրելու արտօնութիւն ստացած էր Կիլիկիոյ Ս. Կաթողիկոսէն։ 40 տարի անդամակցած է իր թեմին գաւառական և կրօնական ժողովներուն։ 1914ին կը վախճանի պատերազմին մէջ և տիրող անդոհին հետեւանօք անչուք թաղում մը կ՚ունենայ, չտեսնելով իր ժողովրդեան անհեղ զօղգօթան։ Ժողովուրդը՝ զինքը զատելու համար Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեանէն որ Մեծ տիտղոսով կ՚անուանէին, զինքը կը կոչէին «պզտիկ Տ. Մարտիրոս»։ Իր պաշտօնավարութեան միջոցին էր որ Կիլիկիոյ Սահակ Կաթողիկոսը 22 Մայիս 1911ին կ՚այցելէ Թոմարզայի վանքը և յաջորդ օրը Ս. Կարապետի վանքը։ 25 Մայիսին կու գայ Կեսարիա և անկէ կ՚անցնի Եօզկատ (Բիւզանդիոն, թ. 4456)։

**Խոսրով եպ. Պէհրիկեան** (1912-1915).— Կ՚ընտրուի 1912ին և նոյն տարին իսկ պաշտօնի կը ձեռնարկէ։ Խոսրով վրդ. ծնած էր Զառա 1869ին. աշխարհական անուամբ Խաչատուր. 1889ին կը մտնէ Արմաշու Դպրեվանքը որուն անդրանիկ դասարանին աշակերտներէն էր։ Վեց տարի ուսում առնելէ յետոյ Օրմանեան եպ.էն կը ձեռնադրուի աբեղայ (1895)։ Իր վարդապետական աւարտաճառին նիւթն էր Տաթեւացիի գործերը։ 1896էն սկսեալ իբր քարոզիչ Կ. Պոլսոյ եկեղեցեաց մէջ կը պաշտօնավարէ և ապա կը ղրկուի նախ Տրապիզոն (1907) իբր Առաջ. Տեղապահ և 4 տարի պաշտօնավարութենէ մը յետոյ 1901 Յունվար 13ին Կ. Պոլիս կը դառնայ։ Նոյն տարին կը ղրկուի Մուշ իբր Տեղապահ և մինչև 1903 կը պաշտօնավարէ։

Խարբերդի առաջնորդ ընտրուած ըլլալով կը փոխադրուի հոն: Կը պաշտօնավարէ 4 տարի (1904-1908)։



ԽՈՍՐՈՎ ԵՊ. ՊԷՀՐԻԿԵԱՆ

*1908–1912 քարոզչական պաշտօններով Կ. Պոլիս մնալէ յետոյ 1912ին ընտրուեցաւ Առաջնորդ Կեսարիոյ և անմիջապէս մեկնեցաւ իր պաշտօնատեղին, ուր իր նախորդին գործը պահպանելու և զայն չքանդելու համար ամէն ջանք ըրաւ։ Վանքին վարժարանը կառավարեց նախկին կազմով և ծրագրով։ Կեսարացիք գոհ իր պաշտօնավարութենէն՝ իրեն տուին եպիսկոպոսական վկայական։*

*1914ին սկիզբները ուղեւորուեցաւ Էջմիածին և Գէորգ Ե.էն ձեռնադրուեցաւ եպիսկոպոս։ 1914 Օգոստ. 1ին կը պայթի համաշխարհային մեծ պատերազմը որուն կը միջամտէ նաև Թուրքիա։*

*Այս թոհուբոհին մէջ Իթթիհատը կը յղանայ դժոխային և դիւային գաղափարը Հայերը բնաջնջելու և Հայաստանը առանց Հայու ձգելու։ Ինչպէս բոլոր հայաբնակ գաւառներու նոյնպէս նաև Կեսարիոյ մէջ սարսափը կ'սկսի։ Հետզհետէ կը ձերբակալուին աչքառու անձնաւորութիւններ և բանտ կը նետուին։*

«Երբ Կեսարահայ երեւելիներու ձերբակալութիւնք յաճախադէպ կը դառնան, Խոսրով եպ. կ'երթայ ազդու կերպով բողոքել կառավարիչին՝ որ չհանդուրժելով անոր համարձակախօսութեան՝ իսկոյն կը բանտարկէ զայն եւ կը յաջողի Պատ. Ատեանին քմածին վճիռով մահուան դատապարտել անձին վրայ ծանրացած՝ Տանկին չքնաղագիւտ մասնագիտութիւնը եղող այն շինծու այլ մահաբոյն ամբաստանութիւնը թէ *«Էրմէնի մուրախաս»*ը եպիսկոպոսանալու առթիւ Ռուսիա անցնելուն՝ Քէօսքէնճէ հանդիպեր, Հնչակեանց ժողովին մասնակցեր եւ դարձին քարոզ մըն է տուեր հոն, վեհափառին ողջոյնները հաղորդելով ժողովրդեան. ինչ քէհիքուր յանձանք...: Զաւէն պատրիարք իր հոգեւոր եղբօր կացութեան վերահասու ըլլալուն պէս՝ կը դիմէ Սայիտ Հալիմ փաշայի ապարանքը (Եէնիքէօյ), գիտնալով հանդերձ որ մահապարտութեան վճիռը կայս. իրատէով վաւերացուած ալ էր: Մեծ Եպարքոսը նախ անգիտանալ կը ձեւանայ, եւ սակայն Ս.ի թախանձանաց տեղի տալով՝ կը խոստանայ ընել պէտք եղածը: Ճամբայ հանուած վճռագիրը Կեսարիայէն կը վերադարձուի եւ Էնվէր փաշա իբր շնորհ կը յայտարարէ, թէ Խոսրով եպիսկոպոսի կախաղանի պատիժը փոխուած է հարիւրմէկ տարուան բերդարգելութեան: Անդին Կեսարիոյ գեհենին մէջ, բանտակից աշխարհական ազգայիններ ջոկ առ ջոկ չուանէ օղակներու մէջ կը քաւեն չգործած մեղքերնին, մինչ տարաբախտ Առաջնորդը դուրս հանուելով իր որջէն՝ 10ի չափ երիտասարդներու հետ կը տարուի անծանօթ ուղղութեամբ (իբր թէ Տիարպէքիր):

Ահա թէ ինչ կը գրէ մեզ՝ Կեսարիայէն տարագիր ուսանող՝ Բիւզանդ Գազանճեան. «Պօզանթի չհասած՝ միացանք մեր Առաջնորդին խումբին: Բաց կառքին մէջ բոլորն ալ այրեր մրկեր էին: Ճանչուորներէն՝ մէջերնին կար Մնտիկեան վաճառատան պաշտօնեայ Բարսեղ Թօզաքլեան, նաեւ քանի մը Նիրզէցիներ: Իրիկուն էր արդէն. որոշեցինք իջեվանել ճամբուն վրայի խանը՝ ետին ջաղացքով: Ինչպէ՞ս քնացանք, Աստուած միայն գիտէ: Արշալոյսը չէր ճեղքուած դեռ, երբ տարօրինակ ձայներ մը եկան ականջիս. «լաիլահի իլլալլահ...»: Ուղտերու վրայ հեծած հրոսախումբ մըն էր եկողը: Փորսուքը սկսաւ: Բարեբախտաբար քաղաքականութիւնը շուտ փոխուեցաւ, խումբն ալ չուեց գնաց: Առտու եղաւ. տեսանք որ աքոռի մեծ *պարխանա* մը հասեր է գիշերանց եւ դուրսը՝ ցողին տակ հանգչեր:

Վերջապէս ճամբայ ինկանք, կառքերնիս մէկ կ'ընթանար: Խեղճ Սրբազանին վրայ հոգի չէր մնացեր: Վախէն բռնուած տղու մը կերպարանքն ունէր. Քովինները պարապ տեղը սիրտ կուտային իրեն: Թօքաքլեան շարունակ կը թելադրէր Սրբազանին օգուտ քաղել ընկերացող ժանտարմային մէկ թոյլ վայրկեանէն եւ զէնքը խլելով լեռ բարձրանալ. այս խորհուրդը սակայն ա՛լ աւելի կը սաստկացնէր իր երկիւղը: Ամէն անգամ որ կառքը ձորի պէս տեղ մը կանգ առնէր, Խոսրով եպ. ապշահար աչքերը չորս դին կը պտտցնէր, կարծելով թէ ալ ամէն բան պիտի ըլլար լմննար: Աղքատիկ մարդու լաթեր հագած էին ամէնքն ալ. աշխարհական տարազով էր Սրբազանը, մօրուքն ալ վար տուած: Ամբողջ օրը զգուշաւոր խօսակցութիւնները չվերջացան՝ փրկութեան միջոց մը ճարելու համար: Մեղք որ ժամանակը մոռցուց ինծի՝ մէջերնին փոխանակուած այդ խօսքերը: Իրիկուան Պօզանթի հասանք: Յատկացուցին մեզ՝ խանին մէջ տեղ մը՝ ուր 30ի չափ Թուրքեր ալ կային: Առտուն կանուխ պատրաստ էինք նորէն մեկնելու. քանի մը ժամուան այդ հանգիստին համար՝ մարդ գլուխ երկերկու արծաթ մէճիտ փրցուցին մենէ: Միասին պիտի չերթայինք այլեւս: Պիտի չմոռնամ մեր սիրելի Սրբազանին թափած արցունքները՝ բաժնուած ատեննիս: Օրեր վերջ երբ Հալէպ հասայ, լսեցի որ Խոսրով եպ. մենէ առաջ հոն հասեր, քանի մը օր արգելափակ մնացեր եւ դէպի Տիգրանակերտ աքսորուեր է իր ընկերներուն հետ: Սեւ լուրը չուշացաւ մեզ հասնելու. ճամբան բոլորը մէկ մաքրեր էր մեր մաքրասէր կառավարութիւնը...:

Նահատակութիւննին տեղի ունեցած է Եդեսիոյ մօտերը՝ զիրենք տանող ոստիկաններուն կողմէ: Հակառակ Սրբազանին աղերսանաց, որ ճակտին ուղղեալ գնդակով մը մահացնեն զինքը, ձեռքերը կապ կը պառկեցնեն եաթաղանին տակ, ոչխարի պէս մորթելով»:

Զաւէն պատրիարքին խղճին խայթ մը եղած է ցարդ այն պարագան որ, եթէ անոր կեղակարծ փրկութեան համար դիմում կատարած չըլլար եւ Խոսրով եպ. իր մահապատիժը Կեսարիոյ մէջ կրէր զոնէ իր գերեզմանը պիտի ունենար, հոն կախուող Հայերուն յատկացեալ որոշ փոսի մը մէջ:

Վկայակից են իրեն Բարսեղ Թապիպեան եւ Կիրմիւշեան (Կէրմիրցի)» (*Թէոդիկ*, Հայ Եկեղեցականներու Գողգոթան)։

*Խոսրով եպ.ի «նկարագիրը հանդարտ և խոհական վարչականութիւնն է եղած» կ'ըսէ Օրմանեան* (Խոհք եւ Խօսք, էջ 443)։

**Սերովբէ եպ. Պուրմայեան** (1919–1932). — *Զինադադարին վաղորդայնին գրեթէ ամէն գաւառներու ազգայինները որոնք կը գտնուէին Կ. Պոլիս, Իզմիր կամ արտասահման զատուեցան իրենց հայրենի բնագաւառները վերստին շէնցնելու և տարագրութեամբ սատ անդ ցրուած բեկորները ամփոփելու համար։*

*Կեսարացիք որոնք այնքան մեծ թիւ մը ունէին Կ. Պոլսոյ, Իզմիրի, Գահիրէի մէջ, իրենց հայրենիքին օգնութեան հասնելու համար ամէն ջանք ըրին։ Առաջին անգամ շարժումը սկսաւ Կ. Պոլիսէն, ուր կազմուեցաւ Կեսարիոյ Հայրենակցական Միութիւն մը, որ իր ճիւղերը ունեցաւ Կեսարիոյ, Էվէրէկի, Իզմիրի և Գահիրէի մէջ։ Անոնք բաւական կարեւոր գումարներ հաւաքեցին Կեսարիոյ և շրջակայից մէջ գտնուած հազարաւոր կարօտեալներուն և հետզհետէ տարագրութենէ դարձողներուն օգնութեան համար։ Նախնական այս աջակցութենէն յետոյ այս մարմինը իր ուշադրութիւնը կեդրոնացուց որբերուն վրայ։ 1919ին Կեսարիոյ մէջ որբանոցի մը կազմակերպութիւնը եղաւ և 1919 Մայիսին անիկա մասնախումբի մը հսկողութեան տակ դրուեցաւ։ Ազգ. կեանքի վերածննդեան համար Կեսարիոյ Հայրենակցական Միութիւնը հարկ կը գտնէ որ առաջնորդարանը վերակազմուի և իր թելադրութեան վրայ 1919 Յուլիսին Կեսարիա կը*

ղրկուի Տ. Սերովբէ քհ. Պուրմայեան իբր առաջնորդական փոխանորդ։ Տ. Սերովբէ քհ. Պուրմայեան աշխարհական անունով Նազարէթ, ծնած է Ատաբազար 1865 Մայիսին։ Նախնական կրթութիւնը տեղւոյն վրայ Ս. Կարապետ թաղին վարժարանին մէջ և երկրորդական կրթութիւնը 1874ին Կեդրոնականի մէջ առած է։ 1880ին Ս. Հրեշտակապետ թաղին Արամեան վարժարանին մէջ նշանաւոր երաժշտագէտ Պապա Համբարձումէն հայկական ձայնագրութիւն սորված է, 1884-1885ին, Արմաշու Ս. Ղեւոնդեան վարժարանի վերջին շրջանին, հոն դասախօսող իր վարպետին Պապա Համբարձումին այցելութեան



1919Ի ՈՐԲԱԽՆԱՄ ՄԱՐՄԻՆ

1. Սմբատ վրդ. Սալպաճեան (տնօրէն Որբանոցի), 2. Տ. Սերովբէ քհ. Պուրմայեան (Առ. Փոխ.), 3. Յարութիւն Գանեֆիլեան (Ատենապետ), 4. Համբարձում Մալխասեան (անդամ), 5. Մկրտիչ Խալասեան (Կ. Պոլիսէն ղրկուած քննիչ որբանոցներու), 6. Առաքել Գալճայեան (Ատենադպիր), 7. Արամ Կիւրիւնլեան (անդամ), 8. Կարապետ Քացախեան (Գանձապետ), 9. Յովհաննէս Ապանեան եւ 10. Միսաք Մանուկեան (անդամք):

պատճառով տուն մը մնացած և վանահայր Խորէն եպ. Աշըգեանէ և յետոյ Պոլսոյ կողմերը Տ. Մամբրէ վրդ.է հայերէնի, եկեղեցական պատմութեան և ուրիշ ճիւղերու համար դասեր առած է։ 1880ին տակաւին 16 տարեկան ուսուցիչ եղած է Պրուսայի Մեծ Նոր գիւղին մէջ, ուրկէ անցած է Պոլիս, Ռոտոսթօ, Նիկոմիթիա և Քէօթահիա ուսուցչական պաշտօններով։ 1902ին Ատաբազարի Ս. Հրեշտակապետ թաղին ժողովուրդին փափաքին և ստիպումներուն վրայ քահանայ ձեռնադրուած է Ստեփանոս Արք. Յովակիմեանէ, նոյն թաղին եկեղեցւոյն մէջ։





30 ՆՈՅԵՄԲԵՐ 1928ԻՆ ՊԷՅՐՈՒԹ ՂՐԿՈՒԱԾ ՈՐԲԵՐՈՒ ԽՄԲԱՆԿԱՐ

Նկ. 61

Տ. Սերովբէ քհ. ձեռնադրուելէ յետոյ ալ կը շարունակէ ուսուցչութիւնը Ատաբազարի ազգ. վարժարաններուն և հուսկ ապա տեղւոյն կեդրոնականին մէջ մինչև 1914ի վերջերը, այսինքն մինչեւ ընդհ. պատերազմ։ Այս միջոցին կը գրէ մասնաւորապէս երաժշտական, ընկերային և բանաստեղծական յօդուածներ Բիւզանդիոնի և Ազատամարտի մէջ։ 1916 Փետր.ին Ատաբազարէն ընտանեօք կը տարագրուի Գօնիա, ուրկէ կը քշուի տեղահանուած Հայերու հետ տեղէ տեղ մինչև Հալէպ և անկէ ալ անդին մինչև Մեսկէնէ ուր կը մնայ 1-2 տարի։ Յետոյ կրկին Հալէպ գալով Առաջնորդարանի մէջ յատկապէս հաստատուած Հայ գաղթականներու Թղթատարութեան տնօրէն կը կարգուի։ 2-3 տարի այդ պաշտօնին մէջ կը մնայ և բաւական աչքառու ծառայութիւններ կ'ընէ։ Նոյնպէս կ'զբաղի որբերու և այրիներու խնամածութեան գործին աշխատակցելով որբանոցի տնօրէնին։ Հալէպ զինադադարին պահուն կը ծանօթանայ Սմբատ վրդ. Սաղպաշեանի հետ որ Իթլիպէն կը դառնար։ Հոն անոնք կ'ուխտեն վերականգնել և վերակազմել Կեսարիոյ Ս. Կարապետին վանքը իրարու հետ գործակցելով։ Այս առիթը ահա կ'ընծայուէր Տ. Սերովբէ քհ.ի, կոչուելով Կեսարիոյ Առաջ. փոխ.ի պաշտօնին։ Սերովբէ քհ. անմիջապէս կը կազմէ Թաղ. Խորհուրդ մը, որուն առաջին գործը կ'ըլլայ եկեղեցապատկան և վանքապատկան կալուածներու ելեւմուտքը կարգաւորել և ապա բանալ Ս. Լուսաւորիչ եկեղեցին, Տիգրան Ֆրէնկեանի բնակարանը Առաջնորդարանի վերածել՝ Նորոգութեամբ, և Ս. Սարգիս եկեղեցւոյ կից Յակոբեան վարժարանի շէնքը կրթարանի յատկացնել։ Յետոյ վարժարանը կը փոխադրուի Ս. Լուսաւորիչ վարժարանին քով՝ Կիւմշեան վարժարանի շէնքը։ Ինչպէս ինքը Տ. Սերովբէ քհ. կը գրէ. «Գործերու ընթացքին յաճախ Թաղ. Խորհուրդ եւ որբախնամ մարմին Առաջ. Փոխանորդին նախագահութեան ներքեւ ազգ. կարեւոր խնդիրներու շուրջ համախորհուրդ կը գործակցին իրարու օգնելով, այնպէս որ շնորհիւ ցոյց տրուած համերաշխ գործակցութեան եւ աննախանձ սիրոյ, Կեսարիոյ հայութիւնը ամենասուղ ժամանակի մէջ իր եկեղեցական, կրթական, ընկերական եւ ընտանեկան հայեցի կեանքով յոյժ մխիթարական վիճակ կը ստանայ»։

Տ. Սերովբէ քհ. ուժ կու տայ որբանոցի հսկող մարմնոյն հետ որբահաւաքութեան գործին։

Տարագրութենէ դարձող ժողովուրդին թիւը հետզհետէ շատնալով հոգեւորականներու պէտքը զգալի կը դառնայ։ Տ. Սերովբէ քհ.ի թելադրութեամբ Կեսարիա կը ղրկուի 1919 Սեպ.ին Ս. Կարապետի միաբանութենէն միակ վերապրող եկեղեցականը՝ Տ. Սմբատ վրդ. իբր վանահայր, և մինչև աւերակի վերածուած վանքին նորոգութիւնը, Առաջնորդարանի կողմէ Պաղչէ Պաշըյի Արամեան վարժարանի մէջ հաստատուած որբանոցին տնօրէն կը կարգուի, և կը գործակցի Առաջ. Փոխանորդին, և կը կարգաւորէ որբանոցին մատակարարութիւնը։ Տ. Սերովբէ քհ. և Տ. Սմբատ վրդ. կը յաջողին նորոգել Ս. Կարապետը շնորհիւ 1000 Թրք. ոսկի օժանդակութեան որ ընծայեց Թալասի Ամերիկեան Նպաստամատոյցը։

Նորոգութիւնը սկսաւ 1919 Նոյեմբերին ճարտարապետութեամբ Մունճուսունցի Յակոբոս Գալֆա Բիռէճեանի և աւարտեցաւ 1920 Մայիսին, 1500 Թրք. ոսկի ծախքով։





31 ՅՈՒԼԻՍ 1929ԻՆ ՊԷՅՐՈՒԹ ՂՐԿՈՒԱԾ ՈՐԲ ԵՒ ՈՐԲՈՒՀԻՆԵՐՈՒ ԽՄԲԱՆԿԱՐԸ
(ԳԱԶԻՐԷԻ ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԵԱՄԲ)

Որբանոցին ծախքերը 1918էն մինչև 1920ի վերջերը, ամենամեծ մասամբ կը հոգայ Կ. Պոլսոյ Կեսարիոյ և Շրջակայից Հայրենակցական Միութիւնը, իսկ 1920 Նոյեմբերէն մինչև 1922 Դեկտեմբերի վերջը Թալասի Ամերիկեան Նպաստամատոյցը։ Այս միջոցին Կեսարիոյ Առաջնորդարանը կը հարկադրուի նաև 15-20 հազար ոսկի գումարով մը իր օժանդակութիւնը բերել զինուորական պիտոյից՝ Թուրք և Հելլէն պատերազմին համար։ Նոյնպէս օգնութեան հասնիլ տեղահանուած բազմաթիւ Հայերու որոնք Կեսարիա կու գային կամ անկէ կ'անցնէին։ Տ. Սերովբէ Աքհ. կը յաջողի 3-4 հազար հոգի Կեսարիա վար դնել և 1922 Նոյեմբ.ին անոնց իրենց տեղերը դարձը դիւրացնել։ Անոնց կը տրուէր կերակուր, ծերերը յատուկ հոգածութեան առարկայ կ'ըլլային, թեթև հիւանդները Որբախնամի կողմէ հաստատուած փոքրիկ հիւանդանոցին մէջ կը խնամուէին իսկ ծանր հիւանդները հասարակաց հիւանդանոցը կը դրուէին։ Անառակուհիներու համար զգաստաբան մը կազմակերպուած էր։ Այսպէս քիչ չատ ամէն կարօտութեան կը հասնէր։

Սակայն Քէմալական կառավարութիւնը միշտ ամէն օր նոր նոր դժուարութիւններ կը հանէր և չարունակ կողոպտելու հետամուտ էր։ Այսպէս 1921 Օգոստոս 3ին կառավարութիւնը կը գրաւէր Փաչէ Փաշըլի Ազգ. Որբանոցը, զայն ոստիկանական վարժարանի վերածելու համար և 6-7 հարիւր որբերը կը փոխադրուէին Ս. Կարապետի վանքը։ Տ. Սերովբէ Աքհ. կը յաջողէր պահ մը որբանոցին մատակարարութիւնը յանձնել Ռըլըֆին որ ամսական 3500 ոսկի ծախքով տիպար հաստատութեան մը կը վերածէր որբանոցը։ Սակայն 1922 Նոյեմբերին Ռըլըֆը վերջնապէս կը թողուր Անատոլուն, և կը հեռանար, տանելով նաև 950 որբեր Պէյրութ։ Դժուար կացութեան մը մատնուած՝ և նիւթական ամէն աջակցութենէ զրկուած՝ այս միջոցին (1924 Նոյեմ.) տան մը առուծախի վերաբերեալ խնդրոյ մը համար չարախօսութեամբ մը կը բանտարկուի երեք ամիս, ինչ որ ազգ. գործերը բոլորովին քայքայման կը մատնէ։ Կ. Պոլսոյ Պատրիարքարանը, Պատրիկ Կիւլպէնկեան և ուրիշ Կեսարացի ազգայիններ, ինչպէս նաև Կ. Պոլսոյ Կեսարիոյ Հայրենակցական միութիւնը և Նիւ-Եորքի Կեսարական Աղքատախնամը ու Տիթրոյիթի Կանանց Կեսարական միութիւնը կը հասնին օգնութեան։ Քէմալական կառավարութիւնը նոր հարուած մը կու տայ 1925ին, ազգապատկան բոլոր կալուածները գրաւելով և այսպէս բոլորովին դժուարութեան մատնելով Ազգ. հաստատութեանց և մանաւանդ որբանոցին՝ մատակարարութիւնը։ Այս դժնդակ կացութեան մէջ 1926ի սկիզբը Կեսարիոյ կարօտեալներուն և ուրիշներուն գլխաւոր օժանդակութիւնը կը բերեն Գահիրէի Կեսարիոյ Հայրենակցականը, Ազգ. Պատրիարքարանը, Կիւլպէնկեանք, Տիգրան խան Քէլէկեան, հանգ. Սզովբոս Պէնկլեանի կըտակը։ 1927 Յուլիսին Տ. Սերովբէ Աքհ. նկատելով որ Կեսարիոյ Առաջնորդարանին միակ գործը խնամատարութիւնն է կը ջնջէ Թաղ. Խորհուրդը և միւս մարմինները և Ազգ. Խնամատարութիւն անուն միակ մարմին մը կը կազմէ։ 1928–29 թուականներուն խնամատարական գործին գլխաւոր նեցուկ կը հանդիսանան Տիար Գալուստ Կիւլպէնկեան և Գահիրէի Հայրենակցականը։

1928 Յունիս 11ին կառավարութիւնը կը գրաւէր Ս. Կարապետի





9 ՀՈԿ. 1931ԻՆ ԳԱՀԻՐԷԻ ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆԻ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԵԱՄԲ ՊԷՅՐՈՒԹ ՂՐԿՈՒԱԾ ՈՐԲ ԵՒ ՈՐԲՈՒՀԻՆԵՐՈՒ ԽՄԲԱՆԿԱՐԸ
(Որբանոցի Տնօրէն Տ. Սմբատ վրդ. Սալպաշեան եւ Առաջն. փոխանորդ Տ. Սերովբէ Աքհ. Պուրմաեանի հետ լուսանկարուած)

վանքին մնացորդ մասը, վանքի մէկ կարեւոր մասը արդէն գրաւուած էր, եւ որբերը դարձեալ կը բերուէին քաղաք, ուրկէ 1928ին աշնան եւ յաջորդ տարուան ընթացքին կը փոխադրուէին արտասահման Տ. Սերովբէ Աքհ. ի դիմումներով։ Սակայն կարօտութիւնները կը մնային եւ նորանոր որբեր երեւան կու գային որոնց խնամքին համար Առաջ. Փոխանորդը կը յաջողէր նպաստ ճարել արտասահմանէն (Տիար Գալ. Կիւլպէնկեան, Տիար Յակոբ Իճուճեան եւ Գահիրէի Հայրենակցական)։ 1930ին Տ. Սերովբէ Աքհ. կը վերակազմէ խնամատարութիւնը եւ կը յաջողի 1931 Հոկտ. 9ին 25 որբեր եւս Պէյրութ ղրկել, Հ. Բ. Ը. Միութեան որբանոցը։ Այսպէս որբանոցը վերջապէս փակուելէ յետոյ Տ. Սերովբէ Աքհ. Կ. Պոլիս կը մեկնէր իր ընտանիքին եւ զաւակներուն այցելելու համար (7 Նոյեմ. 1931)։ Հակառակ անոր որ որոշած էր 1–2 ամիսէն դառնալ, Ազգ. Պատրիարքարանը 31 Դեկ. 1931 թուականով կը հաղորդէր թէ անիկա պիտի չկարենայ դառնալ։ Այս կերպով իր պաշտօնը վերջ կը գտնէր։

**Սմբատ Ծվրդ. Սալպաշեան** (1932– ).— 1932 Յունուարին պաշտօնի կը ձեռնարկէ իբր Առ. Փոխ.։ Արդէն վաղուց վանքին վանահայրութիւնը կը վարէր։ Ծնած է Թոմարզա 17 Յուլիս 1874ին եւ մկրտուած տեղւոյն Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին։ Աշխարհական անունով Գալուստ Տիրացուեան։ Վեց տարեկան հասակի մէջ տեղւոյն Ս. Աստուածածին վանքին մանկանոցը կը դրուի, ուր կ'ստանայ նախնական կրթութիւնը։ 23 տարեկանին Թոմարզայի վանքին մատակարարութեան պաշտօնին կը կոչուի վանահայր Յովհաննէս վրդ.էն։ Այդ տարիքին մէջ երկրորդական ուսման տենչով Տրդատ եպս. Պալեանի կը դիմէ եւ կը մտնէ Ս. Կարապետի վանքը։ Տրդատ եպս. Պալեան տեսնելով անոր մատակարարի յատկութիւնը վանքին մէջ ծառայեցնելու պայմանով նախ Սարկաւագ եւ միեւնոյն տարուան մէջ՝ 1900 Մայիս 28ին աբեղայ կը ձեռնադրէ։ Տրդատ եպ., միշտ գոհ իր ձեռնասունէն, իր բովանդակ պաշտօնավարութեան շրջանին վանքին ծառայութեան մէջ կը գործածէ զայն։ 1910ին երբ Տրդատ եպ. Պալեան կը մեկնի Կեսարիայէն Տ. Սմբատ վրդ.ի կը յանձնէ ժառանգաւորաց վարժարանին մատակարարութեան պաշտօնը զոր կը վարէ խղճմտութեամբ մինչեւ Ընդհ. պատերազմին սկիզբը։ Եղած է նաեւ իր միաբանութեան կողմէն ներկայացուցիչ Կեսարիոյ Գաւառական Երեսփոխանական ժողովին (1906–1908)։ 1915ին տարագրուած է Կեսարիոյ Հայութեան հետ։ Իր աքսորի յետին կայանը եղած է Իթլիպ (Հալէպի գիւղերէն մին) եւ շատերու նման բոլորած է սեւ օրեր՝ մինչեւ պատերազմին վախճանը։ Զինադադարին Զէյթունցի Տ. Բարթողիմէոս վրդ. Թագաճեանի հետ Հալէպ կու գայ ուր Տ. Սերովբէ քհ. Պուրմայեանի հետ ծանօթանալով եւ Կեսարիոյ մասին համաձայնելով Կ. Պոլիս կու գան, անկէ ալ իրենց կնքած ուխտին համաձայն կը մեկնին Կեսարիա, շէնցնելու համար Ս. Կարապետի վանքը։ Սմբատ վրդ. Կեսարիա կը դառնայ 1919 Սեպտեմբերին։ Բացառիկ վերապրող մը Կեսարիոյ շրջանի կուսակրօն եկեղեցականներէն։

1919–1932ին մեծագոյն նեցուկը եղած է Տ. Սերովբէ Աքհ. Պուրմայեանի, որբանոցի տեսչութիւնը եւ մատակարարութիւնը վարելով։

Տ. Սմբատ Ծվրդ. Կ. Պոլսոյ Պատրիարքարանին հրահանգով կը կազմէ Թաղ. Խորհուրդ մը 7 անդամէ բաղկացեալ (8 Յունվ. 1932) եւ



կը ձեռնարկէ քննել Տ. Սերովբէ Աքհ.ի պաշտօնավարութեան շրջանի հաշիւները, սակայն 1928 Յունուար 1էն 1930 Հոկտ. 15 շրջանին համար կարելի չըլլալով եզրակացութեան մը գալ, բոլոր վաւերագիրները եւ տեղեկագիրները 1932 Մարտ 14ին յղուեցան Կ. Պոլիս։ Տ. Սմբատ Ծվրդ. Սալպաշեան այն օրէն այսօր կը վարէ Կեսարիոյ գործերը անշշուկ ու անձայն, իբր բարի, ուշիմ, աշխատասէր եւ անձնուրաց վանական մը, միշտ ունենալով իր խնամքին տակ 1–2 տասնեակ որբ-որբուհի, նոյնքան անկեալ կամ այրի կիներ, եւ նոյնքան կարօտեալ ընտանիքներ, որոնց ամէն ամիս 50–100 ոսկի հացագին կը տրուի։ Նոյնպէս պատահական ճամբորդներու ալ կարօտութեան համեմատ նպաստ կը տրուի, եւ այլն։

6. ԿԵՍԱՐԻՈՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԵԱՆ ԵՆԹԱԿԱՅ ՔՈՐԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆՆԵՐ.— Թեմագրութեան մէջ (տես էջ 906–911) տեսնուեցաւ թէ Կեսարիոյ աթոռը ունեցած էր երբեմն իրեն ենթակայ եպիսկոպոսութիւններ, որոնք էին,

Ա. ԹՈՄԱՐԶԱՅԻ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆ.— Թոմարզա աշխարհագրապէս շատ մօտ էր Լարիսայի (= Ազիզիյէ) որ գիտենք թէ Ժ. դարուն ունէր Հայ եպիսկոպոս մը։ Նոյնպէս խիստ մօտ էր Մուսուռուսուն որ ԺԱ. դարուն կաթողիկոսարան եղաւ։ Ասոնք կը հաստատեն թէ շրջակայքը կարեւոր հայաբնակութիւն մը գոյութիւն ունեցած էր, իր եկեղեցական յատուկ վարչութեամբ, գուցէ Կեսարիայէն առաջ։ Իսկ եթէ ճիշդ է ոմանց պնդումը թէ Ծամնդաւ նոյնն է Թոմարզայի հետ, այն ատեն պէտք է ընդունինք թէ հոն նստած են 1066–1072, երկու կաթողիկոսներ՝ Գրիգոր Վկայասէր եւ Գէորգ Լոռեցի, եւ հետեւաբար անիկա նախ քան Կեսարիա՝ եկեղեցական աթոռ մը եղած է, որ հաւանօրէն պահած է իր գոյութիւնը յետոյ ալ՝ գէթ իբր եպիսկոպոսութիւն՝ վասնզի 1307ին Սսոյ ժողովին մասնակցող եպիսկոպոսներուն մէջ կը յիշուի **Լեւոն եպ. Ծամնդաւի**։

Սակայն մէկ կողմ թողլով այս երկրայելի իրողութիւնները, Թոմարզա 1206ին արդէն հայաբնակ էր (էջ 906) եւ ԺԶ. դարէն սկսեալ ունէր իր յատուկ եպիսկոպոսները՝ որոնք մինչեւ ԺԸ. դարու վերջերը անընդմիջաբար իրարու յաջորդած են։ Միայն մութ կը մնայ աթոռին սկզբնաւորութիւնը։ Ծանօթ եպիսկոպոսներ են.

**Յովհաննէս եպ. Հզնեցի** ( ...—1570–1576... ).— Կը յիշատակուի յիշատակարաններու մէջ (1570, 1572 եւ 1576 թուականով)։ Տրդատ եպ. կը կարծէ թէ 1552–53ին Կեսարիոյ Արքեպիսկոպոս Յովհաննէսը այս անձն է, սակայն տարակուսելի է, թէեւ բոլորովին հաւանականութենէ ալ զուրկ չէ։ Սրապիոն Ուռհայեցիի աշակերտներուն մէջ կը յիշատակուի «Յովհաննէս վրդ. Հզնւոյ» մը (Դաւ. էջ 11) որ կրնայ նոյնացուիլ այս եկեղեցականին հետ, որուն օրով Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին մէջ մտաւորական շարժման մը ծաղկումը կը տեսնուի, գլխաւորութեամբ Աստուածատուր վրդ. Մշեցիի կամ Տարօնեցիի որ իբր ուսուցիչ կը պաշտօնավարէ Թոմարզայի վանքին մէջ։

**Աստուածատուր եպ. Մշեցի** (...1580...).— Ժամանակակից Ղազար եպ.ին Կեսարիոյ, որուն հետ կը յիշուի իբր Առաջնորդ «Տումարծու» (1580ի Մաշտոց)։ Աւելի կրթական գործունէութիւն մը ունեցած է քան թէ վարչական։ Ան Կեսարիոյ եւ շրջակայից կրթական եւ ուսումնական շարժման առաջին ռահվիրաներէն մին է։ Իր հոգեւոր

հայրն էր «երաժիշտ եւ քաղցրաբարբառ» Խաչատուր վրդ. և ուսուցիչը՝ «կուսակրօն» Մակար վրդ. որ «գրչապետ» ալ կը կոչուի։ Վաւերագիր մը (Դիւան Հայոց Պատմ. Ժ. հտ. 396-7) զայն ցոյց կու տայ միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանքին 156)–1578ի առենները, «այրն այն երեւելին» որ Կեսարիոյ, Թոմարզայի, Սեբաստիոյ, Թերբես նաև Խարբերդի շրջանակին մէջ, ինչպէս նաև Երուսաղէմ, 1550ական թուականներէն մինչև նոյն դարուն վախճանը մօտաւորապէս 50 տարի, անխոնջ կերպով աշխատած է, թէ իբր գրիչ կատարելով բազմաթիւ ընդօրինակութիւններ ձեռագիրներու և թէ կազմելով և փրկելով կարգ մը ձեռագիրներ որոնք կորսուելու դատապարտուած էին։ Անկէ զատ անիկա գործած է իբր ուսուցիչ և հասուցած է բազմաթիւ աշակերտներ, որոնցմէ մեզի հասած են յիշատակարաններ և որոնք երախտօք կը յիշեն իրենց ուսուցիչը և վարպետը։ Աստուածատուր եպ. Մշեցի իբր Առաջնորդ Թոմարզայի կարճ պաշտօնավարութիւն մը ունեցած է։ 1582ին կը յաջորդէ ուրիշ մը և ինքն կը մեկնի Երուսաղէմ, ուր է մինչև 1591։

**Ղուկաս եպ.** (1581)(?).— Տրդատ եպ. իբր յաջորդ կը նշանակէ 1581 թուականով Ղուկաս եպ.ը (Հայ Վանօրայք, էջ 97), սակայն կասկածելի է ճշդութիւնը, վասնզի պէտք է եղած ըլլայ

**Անտոն եպ.** (1582).— որ կը յիշատակուի որպէս ձեռագիր Շարականի մը (այժմ Վենետիկ) մէջ մինչ Ղուկասի յիշատակուած ըլլալը չեմ գիտեր։ Իր պաշտօնավարութիւնը հաւանօրէն երկար չէ եղած։

**Յովհաննէս եպ. Չէյթունցի**(1) **եւ իր որդին՝ Յակոբ վրդ. Չէյթունցի**(2) (...1588—...).— 1588ին «Ճաշոց Գիրք» մը գրուած է «ի գիւղս Տումարզձայ», «ի հայրապետութեան Տէր Ազարիային Սիսոյ կաթողիկոսին եւ յեպութե.Սբ. ուխտիս Չէյթունցի Յովհաննէսին եւ որդւոյն Տէր Յակոբ վրդ.ին»: Հետաքրքրական հարց մըն է թէ Յովհաննէս եպ. և Յակոբ վրդ. Չէյթունցի, արդեօք ըստ մարմնո՞յ թէ հոգեւոր հայր և որդի են։ Հաւանական է մտածել թէ Ազարիա կաթողիկոսին (1584-1601) ընտրութիւնը՝ իբր յաջորդ Կիլիկիոյ Խաչատուր կաթողիկոսին, 1586ին Գրիգոր ԺԴ. Պապին հաղորդող գիրին տակ իբր եպիսկոպոս Չէյթունի ստորագրող Յովհաննէս եպ.ին հետ նոյն անձն է այս Թոմարզայի եպիսկոպոսը (1588), որ 1590-1591ին ալ Կ. Պոլսոյ Պատրիարքութիւնը վարած է հաւանաբար։ Այս եկեղեցականին որդին՝ Յակոբ վրդ. Չէյթունցի, ինչպէս Դարանաղցի կը վկայէ, աշակերտն էր Կիլիկիոյ Ազարիա կաթողիկոսին։ Յետոյ առաջնորդ եղած է Թոքատի որուն 1602ի աւերումէն յետոյ խոյս տուած և անցած է Կ. Պոլիս ուր կը գտնենք զինքը, ապաստանած հաւանօրէն իր Պատրիարք դարձած հոգեւոր կամ մարմնաւոր հօրը Յովհաննէս եպ.ին քով և կը դասախօսէ Մատթէոսի Աւետարանին մեկնութիւնը (տես ՀԱ. 1910, էջ 65-79)։ Յակոբ վրդ.ի համար կ'ըսուի «Սա բազում բարութիւնս արար եւ խնամածար էր որբոց,

(1) Տրդատ եպ. (տես Հայ Վանօրայք, 97) Թոմարզայի Առաջնորդ կը նշանակէ 1600ին։ Նոյնպէս (նոյն, 35) կը կարծէ թէ անիկա աւելի առաջ Առաջնորդ եղած է Կեսարիոյ, ինչ որ ճիշդ չէ։

(2) Տրդատ եպ. (նոյն, 97) միայն 1594ին Թոմարզայի Առաջնորդ ցոյց կու տայ, սակայն ինչպէս փաստը կը հաստատէ աւելի առաջ արդէն պաշտօնի էր։



այրեաց եւ յոյժ ողորմած էր աղքատաց, որ երկու ամ յԱրզրում եկաց եւ բազում ծախիւք հոգետուն շինեաց եւ աղքատանոց եւ կերակուր պատրաստեաց հանապազորդ» և անկէ անցաւ Բաբերդի կողմերը։

Հաւանօրէն իրեն կը պատկանէր այն ձեռնադրութեան գիրքը, որ «ի խնդրոյ Տր. Յակոբ անարժան եպ.իս. ի վայելումն անձին իմոյ եւ ի յիշատակ հոգոյ իմոյ եւ ծնաւղաց իմոյ եւ ամ. զարմից իմոց ամէն» (տես Սիսուան, էջ 185), գրուած է 1596ին ի Չէյթուն։ Զայն առնելէն յետոյ մեկնած է ըստ Մեսրոպ եպ. Նշանեանի (Դարանաղցի, էջ ԺԴ.) 1597-1598ին, Բաբերդ ուր Դարանաղցիի ուսուցիչը՝ Վահանաշինու վանքին՝ Սրապիոն վրդ.ը, «տակաւին ընդ իշխանութեամբ էր... եւ զաւազանի օրհնութեան կարգն դեռ չէր առեալ»: Յակոբ վրդ. Չէյթունցի որ կ'երեւայ թէ ինքն ունէր Ծայրագոյն վրդ.ի իշխանութիւն, «մեծաւ հարկիւ» կ'ստիպէր Սրապիոնը «առնուլ զաւազանն»: Անկէ յետոյ կու գայ Կ. Պոլիս ուր կը գտնենք զինքը 1605ին։ 1607ին Ռոտոսթոյի Առաջնորդ կ'ընտրուի և շնորհիւ Եէնիչէրի Աղասի Խալիլի որ իր «տեղացի (Չէյթունցի) եւ մօտակայ ազգային» (Դարանաղցի, 108) էր. տեղւոյն գաղթականներուն օգտակար կ'ըլլայ և եկեղեցին կը շինէ և եօթն ամիս յետոյ կը մեռնի 1608 Յունիս 18ին և կը թաղուի իր ստացած եկեղեցիին մէջ։ Դարանաղցի (էջ 69) իրեն համար կ'ըսէ թէ «մեծ վարդապետն... հռչակեալն ընդ ամենայն աշխարհն Հայոց, մեր վարժապետին զաւազան իշխանութեան տուողն»: Իսկ թէ ինչպէս հեռացած է Թոմարզայէն 1596-97 թուականներուն, այդ մասին ստոյգ ոչինչ գիտենք, միայն կարելի է մտածել թէ Գրիգոր վրդ. Կեսարացիի հետ խնդիր ունեցած է, վասնզի իրարու հին ոխ մը ունենալնուն ակնարկութիւնը կը պահէ Դարանաղցի (էջ 116)։

**Գրիգոր եպ. Ծերուն կամ Պառնատէր** (...1629-1630...).— «ի գաւառն Կեսարիոյ Կապադովկիացոյ ի գեաւղն Տումարզայ» 1629ին «ի հայրապետութեան այսմ նահանգիս Կեսարու Գրիգոր վարդապետի եւ յառաջնորդութեան այսմ գաւառի Գրիգոր Ծերուն եպիսկոպոսի» գրուած է Շարական մը (Հայ Վանօրայք, 37)։ Իսկ 1630ին իբր Առաջնորդ «սուրբ ուխտիս մերոյ Աստուածածնայ» «ի գիւղս Տումարզայ» դարձեալ Կեսարիոյ Առ. Գրիգոր վրդ.ի հետ կը յիշուի «Գրիգոր Պառնատէր», որ կը կարծեմ թէ Յովհաննէս եպ. Չէյթունցիի պէս Չէյթունէն եկած է Թոմարզա, վասնզի 1596ին «ի խնդրոյ Տր. Յակոբ անարժան եպսիս» գրուած ձեռնադրութեան գիրքը «յիՉէյթունոյ վանքն ի սբ. Աստուածածին դուռն յառաջնորդութեան Տր. Ծերուն արհեպիսկոպոսին» գրուած էր (Սիսուան, 185)։ Ալիշան անոր յաջորդ ցոյց կու տայ 1625-34ին Մկրտիչ եպիսկոպոս մը, որով Ծերուն արդէն 1625ին դադրած էր։ Հաւանօրէն 1629-30ին առանձնացած է Թոմարզա որ այդ թուականներուն Չէյթունի Ս. Աստուածածին վանքին մէջ ծաղկող գրչագրական դպրոցին աշակերտներուն գործունէութեան կայաններէն մէկը կը հանդիսանայ, իբր մօտաւոր վայր մը։

**Առաքել եպ.** (...1632-1662...).— Շարականի մը յիշատակարանին մէջ որ գրուած է 1632ին «ի գիւղն Տումարզա ընդ հովանեաւ Ս. Պետրոսի եւ Պաւղոսի եկեղեցւոյս» Կեսարիոյ Առաջնորդ Գրիգոր վարդապետին առտեն, կը յիշատակուի իբր Առաջնորդ «Ս. ուխտիս ... Աստուածածնայ Առաքել աբեղայ»: Նոյնպէս 1638ին իբր Առաջնորդ Թոմարզա «գաւառի Առաքել եպիսկոպոս» կը յիշուի Կեսարիոյ Դաւիթ Արքեպ.ին հետ։ Երկար ընդմիջումէ յետոյ 1661ին դարձեալ «ի գիւղն Տումարզայ» գրուած

երկու Յայսմաւուրքներու մէջ կը տեսնենք յիշատակութիւնը Առաքել եպ.ի որ Առաջնորդ էր «յայսմ գաւառի», և վերջապէս 1662ին «Տումարզայ» գրուած Ճաշոցի մը մէջ, զոյգ «Նահանգին Կեսարու Մարկոս եպիսկոպոսին»՝ կը յիշուի իբր Առաջնորդ «այսմ գաւառի Առաքել եպ.»: Այնպէս որ անժխտելի է որ Առաքել եպ. 1632էն 1662 երկար պաշտօնավարութիւն մը ունեցած է իբր Վանահայր–Առաջնորդ։ Իր մասին կենսագրական տեղեկութիւններ կու տայ Գր. Դարանաղցի, որ «նա է այժմոյս առաջնորդ Կեսարիոյ երկրին եւ վանացն» կ՚ըսէ անշուշտ սխալ տեղեկութեան մը վրայ հիմնուած։ Այս Առաքել վրդ.ը եղբօրորդին էր Մելքիսետ անուն չափազանց տգէտ աբեղայի մը Ամիթի կողմերէն, մականուանեալն «Հերիսա» (Դարանաղցի, էջ 421)։

Այս վարդապետը Սեպուհ լերան Ս. Լուսաւորիչ վանքը գտնուած ատեն Գրիգոր Դարանաղցի ալ կը գտնուէր հոն (1590–1597) և ան հոն էր, երբ ինք մեկնեցաւ աշակերտութեան գնաց։ Դարանաղցի կ՚ըսէ թէ անիկա «երկու եղբօրորդիք ունէր, մինն **Առաքել անուն՝ լաւ հանճարեղ** եւ **իմաստուն**, որ էր ինձ հաւասար ի հասակին» ուրեմն ծնած էր 1576ին։ Դարանաղցին եղած է անոր ուսուցիչը վանքի «այբբենն եւ զամենայն հեգսն ես գրեցի եւ կարդացուցի» կ՚ըսէ։ Նոյնպէս «միւս եղբօրն որ Մկրտիչ էր անունն, զնա այլ շատ ուսուցի ընդ նմա եւ թողեալ գնացի ի Բաբերդ մօտ առ Սրապիոն» 1597 թուականին։

Առաքել և Մկրտիչ կ՚երեւայ թէ ծրագրած էին հետեւիլ Դարանաղցիին բայց «չէին կարացել կեալ անդ, եւ ելեալ գնացել էին ի Տիւրիկէ ի Լօռի վանքն» ուր Մելքիսեդեկ վրդ. Հերիսա «առաջնորդ էին եղեալ» ուր «աւազակ քրդերն սպաննել էին զեղկելին» (Նոյն, 421)։

Անկէ յետոյ «երկու եղբօրորդիքն զարգացան եւ լաւ մարդիկ եղեն» կ՚ըսէ պատմիչը, «մինն որ Առաքելն էր, եպիսկոպոս եղեւ ձեռնադրեալ եւ նա է այժմոյս առաջնորդ Կեսարիոյ... եւ միւս եղբայրն երէց եւ քահանայ» (Դարանաղցի, 421)։

Դարանաղցիի այս թանկագին տեղեկութիւնները կը լուսաբանեն Առաքել եպ.ի խոնարհ ծագումը և անոր զարգացումը։

**Յովակիմ եպ.** (...–1673–1698...).— 1673ին, 1675ին և 1681ին Թոմարզա գրուած ձեռագրաց մէջ յիշատակուած է «Նահանգի Կեսարիոյ» Մարկոս վարդապետին հետ, «այսմ գաւառի» «Ովակիմ եպիսկոպոս» մը։ Տրդատ եպ. Պալեան Յովակիմ եպ.ի պաշտօնավարութիւնը կ՚երկարաձգէ մինչև 1698, ինծի անծանօթ աղբիւրի մը վրայ հիմնուած։

Յովակիմ եպ. վերջինն է այն եպիսկոպոսներուն որոնք ո՛չ միայն Թոմարզայի Ս. Աստուածածին վանուց վանահայրութիւնը վարեցին այլ նաև գաւառը հովուեցին։ ԺԷ. դարուն վերջերէն սկսեալ անյայտ պատճառներով Թոմարզայի վանքը անշքացման կը մատնուի և կը դադրի մտաւորական շարժումը։ Այլեւս ո՛չ վանքին անունին յիշատակութեան կը հանդիպինք և ո՛չ ալ անոր առաջնորդներուն։ Նոյնիսկ գիտելի է թէ ԺԸ. դարուն սկիզբը, 1705ին, Ղազար անուն քահանայ մը որ «Գիւղն Տումարզայ» է կամ աւելի ճիշդ Թոմարզացի և հոն սնած գուցէ, Աւետարան մը կը գրէ «Սբ. Սարգսայ զօրավարին Անապատն» և ո՛չ Ս. Աստուածածին վանքին մէջ։ Ասիկա երեւոյթ մըն է որ կարելի չէ աննըկատ թողուլ։ Հաւանօրէն չյիշատակագրուած փոթորիկ մը Թոմարզայի վանքը կ՚աւերէ և կ՚անշքացնէ։ Հարիւր տարի մոռացութեան մէջ թաղուելէ յետոյ կ՚երեւայ թէ մասամբ կը շէննայ վանքը և դարձեալ



վանքին մէջ կը կազմուի միաբանութիւն, իր սեփական վանահայրերով, որոնք սակայն բնաւ հովուական պաշտօն չունէին և սոսկ իբր վանուց տեսուչ կը պաշտօնավարեն։

Բ. ՆԻՐԶԷԻ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆ.— Ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ 908) Ոսկան եպ. Երեւանցի ԺԷ. դարուն իբր Կեսարիոյ Արքեպիսկոպոսութեան ենթակայ կը յիշէր Hisia-ի եպիսկոպոսութիւնը, որ ինչպէս ըսի արդէն, միայն կրնայ Նիզիան կամ Նիրզէն ըլլալ, որ ունէր համբաւաւոր վանք մը՝ Ս. Գր. Նիւսացիին նուիրուած։ Սիմէոն դպիր Լեհացի որ ԺԷ. դարուն առաջին քառորդին (1617–18) այցելած է Նիրզէ, զայն կը կոչէ Նիզիա կամ Նիւսիա: Ոսկան եպ. Երեւանցի որ նոյն դարուն ապրած էր անշուշտ ինքն ալ զայն կը ճանչնար Նիզիա անունով, և ցուցակին լատիներէնի թարգմանիչը՝ նման բազմաթիւ ընթերցման սխալներու կարգին, հաւանօրէն Նիզիան կարդացած է Հիզիա:

Դժբաղդաբար այս քորեպիսկոպոսութեան աթոռակալները ծանօթ չեն։ Տրդատ Եպ. ԺԵ. դարուն կը կարծէ թէ հոն նստած է **Անդրէաս եպ.** — ժամանակակից Կեսարիոյ Կիրակոս եպ.ին (1460–1495) — որուն սակայն Նիրզէի եպիսկոպոս ըլլալը որոշ չէ։

Նոյնպէս սոսկ քաշքշուք է և քննադատութեան չի կրնար տոկալ 1486ին **Ստեփանոս եպ.**ի գոյութիւնը (Հայ Վանօրայք, 77)։ 1617–1618ին, այսինքն Սիմէոն դպիր Լեհացիի հոն այցելած ատեն վանքը ունէր «եպիսկոպոս մի.... և հաբեղայ մի»։ Եպիսկոպոսը որ ապահովաբար քորեպիսկոպոս մըն էր յանուանէ չի յիշեր այլ միայն կու տայ անոր տրուած «Տէլի Մալազ» վերադիր անունը (ՀԱ. 1935, 93)։

Այս եպիսկոպոսական աթոռը դադրած է հաւանօրէն ԺԷ. դարուն վերջերը կամ ԺԸ.ին սկիզբները։

Ո՛չ մէկ յիշատակ կամ արձանագրութիւն մեզի կու տայ Նիզիայի եպիսկոպոսութեան ո՞ւր տեղերը տարածուած ըլլալուն մասին ամենադոյզն ծանօթութիւն մը։

Գ. Ս. ԴԱՆԻԷԼԻ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆ.— Ոսկան եպ. Երեւանցիի ԺԷ. դարուն կազմած ցուցակին համաձայն Կեսարիոյ արքեպիսկոպոսութեան ենթակայ եպիսկոպոսութիւններէն մին էր Ս. Աստուածածին որ Կեսարիայէն երեք փարսախ հեռու էր (տես էջ 908)։ Ան պէտք էր ըլլար այս վանքը, վանքի հնօրեայ աւանդութեան մը համաձայն ան կը կոչուէր նախապէս Ս. Աստուածածին, և վերջէն տրուած էր անոր Ս. Դանիէլ կոչումը — այնքան անսովոր մեր մէջ։ Իսկ եթէ Ոսկան եպ.ի յիշած Ս. Աստուածածինը՝ Մանճըսընի նոյնանուն եկեղեցին կամ վանքն է, այդ պարագային կէս ժամ հեռու գտնուող այս գիւղին մէջ հաստատուած աթոռն է որ պէտք է ենթադրենք փոխադըրուած Ս. Դանիէլի վանքը, իրեն վիճակ ունենալով՝ ըստ Ն. Երկաթեանի (Բիւզանդիոն, թ. 1166) հետեւեալ գիւղերը։

| | |
|---|---|
| Պէլէկէսի | հինգ վայրկեան հեռու |
| Մանճըսըն (1) կէս ժամ | » |
| Կէրմիր մէկ ու կէս » | » |
| Մունճուսուն երեք » | » |

(1) Տրդատ եպ. (Հայ վանօրայք, էջ 68) և Արիս Գալֆաեան (Զօմախլու, էջ 66) զուրս թողած են Մանճըսըն: Ա. Գալֆաեան անոր տեղ կը յիշէ Նիրզէն, սակայն կասկածելի է ճշդութիւնը։

Ամէն պարագայի մէջ սակայն ԺԷ. դարուն սկիզբը, այսինքն 1617–1618 թուականներուն ինչպէս նաև նոյն դարուն կէսերը, այս վանքին մէջ կը նստէին եպիսկոպոսներ (Սիմէոն Դպիր Լեհացի, ՀԱ. 1935, էջ 92 և Ոսկան եպ. Երևանցիի Ցուցակ) որոնց անունները մեզի ծանօթ չեն։ Ցետոյ հաւանօրէն պէտք է ջնջուած ըլլայ այս քորեպիսկոպոսութիւնը, և Կեսարիոյ առաջնորդութեան ենթարկուած՝ վանքը։

Այս շրջանին պէտք է կարևոր նորոգութիւն մը կատարուած ըլլայ վանքի Կեսարիոյ Առաջնորդներէն Աւետիք եպ. Եւդոկիացիի (1738–1744) համար ըսուած է թէ «սա է պատճառ Ս. Դանիէլի շինութեանն»: Այս խօսքերը անշուշտ կարելի չէ մեկնել կառուցանողի իմաստով այլ աւելի կարգաւորողի և զարգացնողի, քանի որ վանքը անկէ առաջ կար արդէն։ Այս շրջանէն կը յիշուի՝ անշուշտ Ս. Կարապետի միաբաններէն, **Կարապետ եպ.** մը որ հաւանօրէն վանքին «շինութենէն» —յիշատակարանին ըմբռնումով — յետոյ վանահայր կարգուած պիտի ըլլայ։ Տրդատ եպ. ասոր համար կ'ըսէ թէ երկու տարի Կեսարիոյ Առաջ. Փոխ.ի պաշտօնը վարելէ յետոյ կրկին ստանձնած է Ս. Դանիէլի վանահայրութիւնը (Բիւզանդիոն, թ. 3073)։ Նոյն ձևով Ս. Դանիէլի վանահայրութիւնը վարած է **Մատթէոս եպ. Գարամանեան** (1774–1776) (տես վերը, էջ 923), որուն կտակով 1798ին, հաւանօրէն աւանդութենէ մը ներշնչուած, վերստին առանձին վիճակի վերածուած է (տես վերը, էջ 931)։ Ս. Դանիէլի այս անջատ առաջնորդութեան առաջին Առաջնորդ-Վանահայրը կ'ըլլայ.

**Կարապետ եպ. Դաւիթեան Կէրմիրցի «Տէտէ»** (1798–1839 փետր. 12†)։ Մր. Ս. Կարապետի և 1778ին վարդ. և 1798ին եպս. ձեռնադրուած։ Ճգնաւոր և ազնիւ մարդ։ 42 տարիներ կը մնայ վանքին մէջ օգտակար ըլլալով և կատարելով շինարարութիւններ թէ՛ վանքի և թէ՛ իրեն թեմ գիւղերուն մէջ (տես իր մասին նաև էջ 934)։ Դաւիթ-Դանիէլեան կաթողիկոսական վէճերուն ատեն 1802 Մայիս 27ին Իւչ-Քիլիսէ վանքին մէջ գումարուած ժողովին մասնակցած է (Դիւան Հայ. Պատմ. Ե. հտ. 234)։ Կ'ստորագրէ «Կարապետ եպ. Կեսարիոյ»։ 1823ին ալ գացած է Երուսաղէմ և ապա Կ. Պոլիս, ուր Պատ. Փոխանորդ եղած է կարճ ատեն մը։ Իր երկար պաշտօնավարութեան միջոցին ունեցած է շատ մը աշակերտներ որոնցմէ ոմանք մնացած են վանքին մէջ իբրև միաբան և պարկեշտօրէն և խղճմտութեամբ ծառայած և ոմանք վանահայրութեան պաշտօնին ալ հասած են։ Ասոնցմէ Մարտիրոս վրդ. իր ծերութեան և բացակայութեան ժամանակները իր փոխանորդն էր վանքին մէջ։ Այս Մարտիրոս վրդ.ը վախճանած է վաղահաս կերպով 1833 Փետր. 21ին, ինչպէս կը տեսնուի իր տապանաքարէն որ կը մնար վանքին մէջ հետևեալ արձանագրութեամբ.

«Այս է տապան Մարտիրոս վարդապետի, փոխանորդ վանուց Սրբոց Դանիէլի... փոխեցաւ ի քառասուն վեց ամաց հասակի, ի 1833 Փրկչին ամի, եւ 21 Փետրուարի»:

Կարապետ եպ. մեռած է 1839 Փետր. 12ին իննսունամեայ, և թաղուած վանքին եկեղեցւոյն արեւմտեան դրան ներքին կողմը։ Իր տապանաքարին վրայ կը կարդացուէր.

«Այս է տապան Կարապետ Արքեպիսկոպոսի,
Ընտիր վերատեսչի Կեսարիոյ Մեծի,
Որ նստաւ ի սուրբ վանս քառասուն ամի,



Տեղեաւ ի Դաւիթեան զարմէ Կէրմիրցի
Եւ վեշտասան ձեռնասուն աշակերտս ունի.
Աստէն փոխեցաւ իննսուն ամաց կենի,
Ի 1839 ամի Փրկչին եւ Փետրուարի յերկոտասաներին»:

**Ղուկաս վրդ. Կէրմիրցի** (1841 Հոկտ. 1–1842).— Ձեռնասուն Կարապետ եպ.ի։ Վանահայր կը կարգուի Կ. Պոլսոյ Աստուածատուր Պատրիարքի 1841 Հոկտ. 1 թուակիր մէկ կոնդակով։ 1821–1823ին Առ. փոխանորդ եղած է Կեսարիոյ մէջ (տես վերը, էջ 933)։

Ղուկաս վրդ. երկայնահասակ և գեղեցիկ մարդ մըն է եղեր, բնութեամբ վառվռուն, ուսեալ և գործունեայ։ Վանահայրութիւնը կը վարէ մէկ տարի և յետոյ կը հեռանայ վանքէն, և կը մտնէ Ս. Կարապետի միաբանութեան մէջ, ուրտեղ այլ և այլ պաշտօններ կ'ունենայ և օգտակար կ'ըլլայ։ Կ. Պոլիս Պատ. Փոխանորդ կամ Գաղատիոյ Առ. փոխանորդ եղած է կ'ըսուի։ Իբր բեմբասաց համբաւ ունեցած է։ Վախճանած է 1860ին Կէրմիրի մէջ և թաղուած տեղւոյն եկեղեցիին առջև եղած գերեզմանատան մէջ։ Իր տապանաքարն է հետևեալը.

«Ղուկաս վարդապետ քարոզող բանի,
Արդեամբք համբաւեալ մինչ էր կենդանի,
Փոխեալ առ Աստուած կայ յայս տապանի,
Անձայն քարոզէ բոլոր աշխարհի,
Զինել վասն անձնիւր հասակի,
Այլ արքուն մնալ տեառնականչ ձայնի,
1860 Յունուար 6 ի հայրենին ի Կէրմիր»:

**Իսահակ վրդ. Դաւթեան Կէրմիրցի** (1843–1862).— Ձեռնասուն և ազգական «Տէտէ» Կարապետ եպ.ի։ Վանահայրութեան պաշտօնի կը կոչուի 1843ին և 19 տարիներ կը շարունակէ իր պաշտօնը։ Ունեցած է մեծ գործունէութիւն։ Իր օրով գրեթէ հիմնովին նորոգուած է վանքին եկեղեցին և աւելցած՝ պահարան մը ուր կը գտնուի մկրտութեան աւազանը։ Ասոնց յիշատակարաններն են

1. Եկեղեցւոյն ճակատը.

«Տեսչութեան երկնային ի բարձանց իջեալ ի հայց
Ջերունեան Տանարս այս վերստին նորոգեաց
Յանուն Ս. Դանիէլ քաջազարմ սերնդի,
Քաջազուն Ոսին վեհ մեծանուն իշխանի:
Օգնութեամբ եւ սրոք Հայկազնեան զրոհի,
Եւ ջանիւք Առաջնորդ Իսահակ զգօն դեսի,
Որ յաջորդ Կարապետ Սրբազան վեհի,
Ի զարմէ Դաւթեան եւ երկրաւ Կէրմիրցի.
յամի ՌՄՂԱ. Նոյեմբեր 14» (= 1842):

2. Պահարանին դրան վրայ.

«Բարձրելոյն անճառ շնորհ հեղեալ յերկնից
Նորոգեաց զայս կնքասուն սրբոց վանից
Արդեամբք եւ ծախիւք մեծահաւատ Ամիրայի,
Պենսուսեցի Պօղոս Աղայ Արքունի Դպրի,
Ջանիւք ճգամբ Տեառն Իսահակայ սրբոյ ուխտի,
Գերարքուն պետի վսեմ Առաջնորդի,
Յամի հազար ութն հարիւր թուականի,
Եւ յաւելմամբ քառասուն միոյ ընդի»:

Իսահակ վրդ. անձնական բարեկամն էր Օտեան Եաղըճի Պօղոսի (հայր Գրիգոր Օտեանի) որուն ծախքով նորոգած էր Թադէոսեան աւազանին պահարանը ինչպէս կը տեսնուի արձանագրութենէն, ուր «մեծահաւատ Ամիրա» կը կոչուի «Պենեսուլեցի Պօղոս Աղայ Արքունի Դպիրը» որ ուրիշ մէկը չէ այլ ծանօթ, Եաղըճը Պօղոսը։

Իսահակ վրդ. վախճանած է 1862ին և թաղուած վանքին գերեզմանատունը, ուր կը մնար իր անշիրիմ գերեզմանը։

**Կարապետ Արքեպ. Ալակէօզեան Կէրմիրցի** (1863–1867 *Օգոստոս* 17†).— *Այս եկեղեցականը իր վարդապետութեան ժամանակ Կէրմիրի Ս. Ստեփանոս եկեղեցիին վերաշինութեան մեծ աշխատութիւն կու տայ։ Յետոյ իբր Առաջնորդ կը պաշտօնավարէ* 1839*ին Կիւրին,* 1840*ին Շապին-Գարահիսար,* 1842–44 *Էրզրում,* 1847–48 *Կարս և Արդուին,* 1852*ին Տարօն (Մուշ),* 1854*ին Բաղէշ,* 1859*ին կրկին Տարօն։*

1847*ին Կարս գտնուած ատեն Մատթէոս Պատրիարք Զուխաճեանի (ապա Ամենայն Հայոց Կաթողիկոս) փափաքին համաձայն, Անի երթալով, մեծ աշխատութեամբ, այնտեղ գտնուած վանքերու և եկեղեցիներու նկարագիրը, համառօտակի կատարելով, և ամէն յիշատակարաններն ալ ճշգրտօրէն ընդօրինակելով, մէկ օրինակը կը ղրկէ Պատրիարքին և մէկ օրինակն ալ իր քովը կը պահէ։ Այս աշխատութիւնը կը բաղկանայ եղեր 12 տետրակներէ 32ական էջնոց։ Ասոնցմէ* 10 *փճացած և ցեցերու կեր եղած և միայն երկուքը մնացած էին մինչև Ընդհ. պատերազմ։*

*Կարապետ եպ. Ալակէօզեան, այսպէս դուրսերը երկար տարիներ պաշտօնավարելէ յետոյ կը դառնայ Կեսարիա և կը մնայ Ս. Դանիէլի վանքը, իբր նախկին միաբան։*

1862*ին երբ Իսահակ վրդ. կը վախճանի, ինքն կ'ընտրուի վանահայր* (1863)*։ Կարապետ Արքեպ. Ալակէօզեան մեծ դեր ունեցած է իր ծննդավայրին՝ Կէրմիրի Պարթեւեան վարժարանի հիմնարկութեան մէջ թէ՛ նիւթապէս և թէ՛ բարոյապէս։ Այս դպրոցը կարեւոր դեր մը կատարած է շրջակայից մտաւորական շարժման մէջ։ Կարապետ եպ. չորս տարուան պաշտօնավարութենէ մը յետոյ կը վախճանի* 1867 *Օգոստոս* 17*ին* 75 *տարեկան և կը թաղուի վանքի եկեղեցիին արեւմըտեան դրան առջև, «Տէտէ» Կարապետ եպ.ի գերեզմանին մօտ։ Իր տապանաքարին վրայ գրուած է.*

«Աստ հանգչի, Կարապետ Սրբազան Արքեպիսկոպոս, Որդի Սահակայ, զարմ Ալակէօզեան, որ քառասուն եւ հինգ ամս հովուեաց զԱզգս Հայոց, նախ ի Կարմիր ի հայրենիս, զտեսչութեան եկեղեցւոյն նորոգ շինման վարեաց պաշտօն: Եղեւ ապա դէտ 'ի Կիւրին եւ 'ի Կարին, Կարս, Շապին Գարահիսար, Երկիցս Տարոն, Բաղէշ, Արդուին, զիւր հովուութիւն վայելեցին: Կնքեաց յայս վանս հուսկ ապա զիւր մահկանացուն: Իսկ ես նորին հայրենակից եւ ձեռնասուն, Կարապետ վրդ. Տահինեան զայս արձան տխուր նշան կանգնեմ սիրոյ որդիական: Ծնունդ ի Կարմիր 1792, մահ ի Ս. Դանիէլ 1867 Օգոստոս 17, ի Քրիստոսի թուականին»:

**Ստեփան վրդ. Էրքիլէթցի** (1867 *Հոկտ.*–1874).— *Ձեռնասուն Տէտէ Կարապետ եպ. Դաւթեանի։ Վանահայր կ'ընտրուի* 1867 *Հոկտ.ին և կը պաշտօնավարէ ինն տարի։ Թաղուած է վանքին մէջ* (Փունջ, 937)։

**Յովհաննէս վրդ. Քէտիլէրցի** (1877–1881†).— *Նոյնպէս աշակերտ Տէտէ Կարապետ եպ.ի, վանահայր կ'ընտրուի* 1877*ին և միայն հինգ*



*տարի պաշտօնավարելով կը վախճանի* 1881*ին և կը թաղուի նոյնպէս վանքին գերեզմանատունը։ Ասոր օրով վանքը թէ՛ ժամանակին ձախորդութեններէն և թէ իր անգործութենէն կամ թուլութենէն, շատ թշուառացաւ և աւեր հացի կարօտ մնաց* (Մասիս, *թ.* 3848)։

**Դաւիթ վրդ. շուշտակ Կիւրինցի** *Փոխանորդ* (1881–1883).— *Յովհաննէս վարդապետի վախճանումէն յետոյ տարիներով վանքը կը մնայ առանց վանահայրի և Դաւիթ վրդ. անունով միաբան վարդապետ մը, իբր Փոխանորդ վանքին գործերը կը վարէ։* 1883*ին կը թողու վանքը և կը քաշուի Թոմարզայի վանքը, ուր կը վախճանի* (Հայ Վանքեր, 73)*, իսկ ուրիշ տեղեկութեան մը համաձայն (տես* Բիւզանդիոն, *թ.* 3122 *նոյնպէս Տրդատ եպ. Պալեանի կողմէ գրուած) Դաւիթ վրդ. առժամեայ վանահայր եղած է* 1885–1886*ին և ապա յարած է Բողոքականութեան, և թողլով եկեղեցականութիւնը ամուսնացած է Մարզուանի մէջ։ Խեղճ վիճակի մէջ մեռած է։ Իր անունը կը յիշատակուէր «*Չիք Դաւիթ*» ձեւով։*

**Ստեփաննոս եպ. Սանտալճեան Պրուսացի** (1885–1910†).— *Ծնած է* 1836*ին։ Միաբան Էջմիածինի։* 1861*ին վարդապետ կը ձեռնադրուի, և* 1868*ին եպիսկոպոս։* 1875*ին անհրաման կը մեկնի Հռոմ, սակայն յուսախաբ կը դառնայ Երուսաղէմ, ուր կը միաբանակցի և երկու տարի* (1876–1878) *կը մնայ։ Յետոյ կը մեկնի Կեսարիա և Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը կը մնայ իբր հիւր։*

1885*ին Ս. Դանիէլի վանահայր կ'ընտրուի։* 1888*ին վանքին սարկաւագներէն մին՝ վարդապետ կը ձեռնադրէ և միաբանութեան մը հիմը կը դնէ* (Մասիս, *թ.* 3848)։ *Ինչպէս կը թուի իր պաշտօնավարութեան սկիզբները ջանքեր կ'ընէ վանքը պայծառացնելու համար* (Վտարանդին, *նոյն*)*, կը հաստատէ նաև փոքր դպրոց մը, որ սակայն շուտով կ'անշքանայ։* 1891*ին արդէն պարտքի տակ էր վանքը և բոլորովին խեղճութեան մատնուած*(1)*։ Ստեփաննոս եպ. իր քառասնամեայ վանահայրութեան շրջանին, երբ արդելականի մը կեանքը ապրեցաւ հոդ, աքսորավայրի այդ միայնութեան մէջ, ձեռնադրիչ եպիսկոպոսի մը դերը կատարելէն զատ ուրիշ օգտակար գործ մը չկրցաւ կատարել։ Հարիւրաւոր ընծայացուներ դիմած են հոն մտադիւր՝ աղաչաւոր, երկու օր վերջը մեկնելու համար անկէ, քահանայի մը լոկ փակեղն ու սքեմը միայն հագած ինչպէս ըսած է Թորգոմ Արքեպ.* (տես Բիւզանդիոն, *թ.* 5313)*։ Պատրիարքարանը* 1899*ին նախ արգիլեց քահանայ ձեռնադրել* (Փունջ, *թ.* 2634) *և ապա* 1904*ին վանքին ենթակայ թեմերը Կեսարիոյ աթոռին կցեց և ջնջեց Ս. Դանիէլի առաջնորդութիւնը և Ստեփաննոս եպ.ը Պաղտատի Պատ. Փոխանորդ ընտրեց. սակայն անիկա մերժեց այդ պաշտօնը և մնաց Ս. Դանիէլի մէջ։ Հոն վախճանեցաւ* 1910*ին։*

*Այս թուականէն յետոյ է որ իրականին մէջ գործադրութեան դրուեցաւ* 1904*ի որոշումը և վանքը և իր թեմերը յանձնուեցան Կեսարիոյ Առաջնորդին որ վանքին փոխ-վանահայր մը դրաւ։ Այսպէս*

---

(1) 1885*էն* 1898*,* 14 *տարուան հաշիւներէն կ'երեւայ թէ վանքը այդ շրջանին ունեցած էր* 75,000 *ղրուշ մուտք և* 113,000 *ղրուշ ելք, ըստ իրեն ներկայացուցած հաշուեցուցակներուն* (Փունջ, *թ.* 2622)։

*վերջ գտաւ անբնական բաժանումը որ ստեղծուած էր երբեմն: Այս կերպով այս վանքին կապուած 3-4 գիւղերը որոնք վերջամնաց աւանդութեամբ մը տակաւին Կիլիկիոյ Կաթողիկոսութեան ենթակայ կը համարուէին՝* (տես էջ 912) *Էջմիածինի կապուեցան:*

## 3.— ՀԱՅ ՎԱՆՔԵՐ

*Հայ վանքերը ոչ միայն իբր աղօթարաններ այլ նաեւ իբր ուսումնավայրեր մեր անցեալ կեանքին մէջ կատարած են նշանաւոր դեր: Այս տեսակէտով անոնք մեր նախնական կրթարաններն են, և որքան կրօնական նոյնքան մտաւորական կեանքի վառարաններն եղած են:*

*Կապադովկիոյ հայութիւնը որ պատմական երկար կեանք մը բոլորած է այս երկրին մէջ, ունեցած է մօտաւորապէս երեք տասնեակ վանքեր որոնցմէ միայն չորսը* 1915*ին դեռ շէն էին:*

1.— *Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՄԱՅՐԱՎԱՆՔ.— Կեսարիոյ հիւսիս–արեւելեան կողմը,* 18 *քիլոմէթր հեռու, Խաչ լերան կուշտն ի վեր և Էֆքէրէի հարաւային լեռնադաշտին արեւմտեան կողին վրայ կառուցուած է այս անուանի և հռչակաւոր վանքը: Թուրքերը զայն կը կոչեն* «Էֆքէրէ Պէօյիւք Մանասթըր»:

*Իր շինութիւնը՝ ուշագրաւ է: Զայն կառուցանողները կարծես թէ նախահոգութիւնը ունեցած են զայն պաշտպանելու յարձակումնե-*



Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔ

*րուն դէմ եթէ ոչ բանակներու գէթ աւազակներու՝ որոնք քիչ չէին այս շրջանակներուն մէջ* (V. Cuinet, *էջ* 316):

*Իր դիրքը ու տեսարանը՝ արդէն նկարագրուած* (*էջ* 776–7) *վերստին ներկայացնելու պէտք չունիմ, սակայն կը հետեւիմ Եղիազարեանի քայլերուն, անոր ներսը շրջելու համար:*

«Կը մտնես պատկառանքի տրոփը սրտիդ՝ իր ցած, լայն ու հաստ դռնէն. վեր կ'ելլես տաշուած սեւ ժայռերով յատակուած կիսամութ անցքի մը աստիճաններէն: Երբ լոյսին ելլես ձախդ — դէպի հիւսիս՝ կ'երեւի ուրիշ դուռ մը. հազիւ անկէ ներս մտած՝ կը տեսնես դիմացդ երկայն նրբանցք մը դարձեալ կիսամութ. անոր ձախ կողմը — պարիսպին վրայ — շարուած կ'երեւին վանականներու յատկացուած բնակարաններու երկայն շղթան: Իսկ աջ անկիւնը, նորէն կէս մութի մէջ թաքնուած կը տեսնես դուռ մը, որ կը բացուի խաւարին ու երկայնաձեւ ու աւելի նրբանցքի մը նմանող ծածքի մը վրայ. արտաքին գաւիթն է ան վանքի տաճարին(1): Խորհրդապաշտ ոգի մը գրաւած է քեզ հոդ. մթութիւնը, նաեւ խոնաւութեան բորբոսի բուրում մը՝ խառնուած խունկի ու մոմի հոտին հետ, վերջապէս քեզ շրջապատող հարիւրաւոր անկենդան, բայց աւելի քան կենդանի էակները պերճախօս արտայայտութեամբ պատկերներ տեսակ մը մագնիսացումի ենթարկած են քեզ: Անոնք ընդհանրապէս քեզ կը նային հեռախոյզ նայուածքով. ոմանք կը ժպտին, ու իրենց ժպիտը երկնային ազնուութիւն մը ունի. ոմանք խոժոռ են, ու իրենց խոժոռութիւնը կ'արթնցնէ մէջդ յիշատակը մեղքերուն զորս չէիր ուզեր ինքզինքիդ իսկ խոստովանիլ. ուրիշներ տխուր, այդ տխրութիւնը կը յիշեցնէ քեզ թէ գերի ես, կամ բարոյական վշտեր տուայտանքին տակ, ու կը մխիթարուիս այն սրբազան տրտմութեան առջեւ զոր կ'երեւէ պատին սուրբը: Ու այս խորհուրդներուդ միջոցին կը յիշես թէ ամբողջ նախնիքներդ քեզմէ առաջ ծնրադրած են խոնաւութեան շոգիով մշտաթաց այդ պատերուն առաջ եւ գաւթին տամուկ սալաքարերուն վրայ: Ու ինքնաբերաբար կը տարւիս ծնրադրելու նաեւ դուն, յետին օղակը նախահայրերուդ շղթային: Եթէ հաւատացեալ մը չէիր, արդէն ես՝ այդ միջոցին. ու եթէ չես աղօթած կեանքիդ մէջ, մտքիդ մէկ անկիւնէն յանկարծ կը բխին մանկութեան ատեն մտքիդ մէջ զուցէ բռնապէս թխմուած աղօթքի բեկորները՝ ինքնաբերաբար: Երբ ոտքի կ'ելլես, կը զգաս թէ կեանքը աւելի թեթեւ է, իր վշտերը նուազ դժուարակիր են եւ իր բաղձանքները հազիւ թէ բան մը կ'արժեն: Յետոյ կը մտնես ուրիշ դռնէ մը ներս: Կը տեսնես տաճար մը ցած, միշտ մութ, բայց խորախորհուրդ: Իր երրեակ փոքրիկ խորանները, կող կողի փակած, խաւարի խորհուրդին մէջ պահւած են. կարծես թէ հաւատացեալներու Աստուծոյն թանձր շուքն է որ իրենց վրայ թեւածած է: Իր չորս հաստ ու քառանկիւն սիւները, իր թանկարժէք յախճապակեայ քարերով զարդարուած պատերը, գլխուդ վրայ ցածցող անզմբէթ կամարները, մէկ կողմէ ծանր մեղքի պէս ճնշում մը կը ծանրացնեն վրադ, միւս կողմէ յաւիտենական անհունութեան միսթիք երազը կը ներշնչեն մէջդ: Մաղթանքներն ու շարականները, զոր այդ տաճարին մէջ կ'եղերերգեն մահկանացու աշխարհէն մասամբ ոտքերնին վերցած աբեղաներ՝ տարբեր իմաստ մը ունին կարծես, աւելի խորախորհուրդ են, ու աւելի մօտիկ Աստուածներուն: Գուցէ անոր համար է որ այնքան մեղմ ձայնով կ'արտաբերուին հոդ:

Ձախ պատին վրայ դուռ մըն ալ կ'երեւի: Ներս կը մտնես: Երկրորդ տաճարի մը մէջն ես, աւելի փոքր(2): Դիմացդ դարձեալ դուռ մը, պարիկներու վայել դուռ մը՝ այս անգամ, համակ սատափով ընդելուզուած, սատափ–զարդուն է ան. Ս. Կարապետ վանքին ամենաթանկագին գոհարը, արեւմտեան թրքահայութեան հմայեկը: Այդ դրան ետին մատուռի ձեւով խորանին մէջ, եւ մարմարեայ փառայեղ տապանի մը մէջ կը հանգչին Ս. Կարապետի մասունքները, որոնք նուիրուած են Ղեւոնդիոս Հայրապետին կողմէ Գրիգոր Լուսաւորչին եւ անոր ձեռքով ամփոփուած այդ գերեզմանին մէջ կ'ըսուի:

Անկիւնն այն նրբանցքին որուն վրայ տողաշարուած են վանականներու կրկին յարկերու վրայ բարձրացած բնակարանները, կ'երեւի ուրիշ դուռ մը. ան կը բացուի հրաշալի դիրքի մը վրայ հաստատուած վանքի վարժարանին վրայ, նախ առաջդ պարզուած է ընդարձակ բակ մը՝ սրբատաշ քարերով յատակուած. անկից անդին բարձրացած է վարժարանի ընդարձակ սրահը իր յարակից մասերով — տասներկու դասարան, տեսչարան մը, գծագրատուն մը եւ

(1) *Ս. Հրեշտակապետ կոչուած:*

(2) *Ս. Կարապետի եկեղեցի:*

հիւրանոց մը— ամէնքը բնութեան լիառատ լոյսով փողփողուն: Անոնց պատուհանները մեծ մասամբ կը նային պարիսպին, Խաս-Պախչային եւ անկէ անդին պարզուած չնաշխարհիկ տեսարանին վրայ. միւսները կը նային վարժարանը չորս կողմէ պարուրող բակին վրայ: Աջ անկիւնը սանդուխի ոլորք մը կ'երեւի. ան կ'առաջնորդէ ուսուցիչներու բնակութեան յատկացուած տուները, երկու սալայատակուած զբօսավայրեր, նոր սեղանատունը, խոհանոցը, վերջապէս երեք բարձրադիր ննջարանները:

Գալով վանքի հարաւային կէսին, անոր ընդարձակ բակը երեք կողմէն շըրջապատուած է ուխտաւորներու բնակութեան յատուկ խուցերով՝ քաղերու բաժնըւած— Սարմսագլը քաղ, Թօզաթ քաղ, Նոր քաղ, Գայսէրի քաղ, Չէմէ քաղ եւ Չէյթուն քաղ: Աջ կողմի սենեակները, իրենց առաջը ունենալով կամարակապ նեմելիքը կը նային ուղղակի ձորին վրայ, ձախ կողմի կրկնաշար քաղերը կռնակնին տուած են լերան կողքին ու կը դիտեն վանքի բակը, իսկ աջ կողմի սենեակներուն տանիքէն անդին՝ լայնարձակ տեսարանը: Կառածիներու ախոռները աջ կողմի, իսկ մեծ ջրամբարները ձախ կողմի քաղերուն ներքեւն են հաստատուած: Ու բոլոր ասոնցմէ զատ, վանքն ունի նաեւ իր մառանը, քանի մը մեծաթոս աղբիւրները, վիմափոր մեծ ամբարանոցը, նաեւ վերջապէս իր մայրապետանոցը՝ թէպէտեւ անբնակ միշտ» (*Եղիազարեանի Ձեռագիր*)։

*Այս վանքին հիմնարկութեան թուականը յայտնի չէ։ Զանազան աւանդութիւններ կան իրար հակասող։ Ոմանք կ'ըսեն թէ Թադէոս Առաքեալ շինած է* (Ընդարձ. Բառ.), *իսկ ուրիշներ կ'աւանդեն թէ այս վանքը շինուած է* 251*ին Փիլմելիոս Եփեսոսի եպիսկոպոսէն կամ Ղեւոնդիոսէն նախապէս Նանէ դիցուհւոյն նուիրուած կռատունի մը տեղը (Նոյն և Սերովբէ քհ. Պուրմայեան,* Հայ Խօսնակ, 1925, *էջ* 68)։

*Զենոբ Գլակ կը պատմէ թէ Յովհաննէս Աւետարանիչ՝ Երուսաղէմի մէջ Յովհաննէս Կարապետի գերեզմանը կը գտնէ և նշխարները, Զմիւռնիոյ Պողիկարպոս հայրապետին ձեռքով Եփեսոս կը ղրկէ, իր հիմնած եկեղեցիին մէջ ամփոփելու համար։ Մինչեւ Դեկոս կայսր այդ նշխարները հոն կը մնան։ Անկէ ետք, երբ Փիրմելիոսի դէմ հալածանք կ'սկսի, անիկա այդ նշխարները միասին առած՝ կը տանի Կեսարիա* (251*ին*), *ուր մեծ խնամքով կը պահուին, մինչեւ Դիոկղետիանոս կայսեր իշխանութեան վերջին տարիները։* 301*ին Լուսաւորիչ երբ Կեսարիա կու գայ Ղեւոնդիոսէն ձեռնադրուելու, Թախանձանօք կը խնդրէ Ս. Կարապետին նշխարները։ Ղեւոնդիոս կը դժկամակի։ Հայոց հայրապետին ուղեկից նախարարները սակայն որոշած կ'ապառնան Կեսարիան ամբողջ այրել, եթէ ան չի համաձայնիր։ Ղեւոնդիոս կու տայ* «զԿարապետի զոսկերս բարձանցն ձախոյ, եւ զերկուս սրուն եւ զմասն ինչ ոսկերաց ողինն» *բացի Աթանագինէին նշխարներէն։*

*Հայ աւանդութեան համաձայն Լուսաւորիչ այդ նշխարներէն մաս մը հոս դնելով վրան մատուռ մը կը կանգնէ և այս կ'ըլլայ նախնական կորիզը Հայ վանքին (Վտարանդին,* Մասիս, *թ.* 3847)։ *Առանց արժէք տալու այս աւանդութիւններուն, ապահովաբար կարելի է նկատել Ս. Կարապետի վանքը քրիստոնէական նախնական դարերու հիմնարկութիւն մը, շատ հաւանօրէն յունական կամ օրթոտոքսական, որ գուցէ Կեսարիոյ Իսլամ տիրապետութեան ենթարկուած օրերուն* (1073-1074) *հիմնայատակ կործանած է (տես վերը,* 452 *և* 724)։

*Նոյնիսկ կարելի է մտածել թէ անիկա վաղեմի մէկ կայանն էր Կապադովկեան ճգնաւորներու կամ սորաբնակներու, նախ քան վանականութեան կազմակերպութիւնը և յետոյ է որ անիկա վանքի մը վերածուած է, (վերը էջ* 261-2)։ *Այս տեսութիւնը կը հաստատէ վանքին շուրջը գտնուած կարգ մը չափազանց հին մարդկային ձեռակերտներ։ Այսպէս Ս. Կարապետի վանքին առջեւ* Ֆրէնկ Տէրէսի *կոչուած ձորին երկու կողմերը բարձրացող սեպ, վիթխարի, միապաղաղ ժայռերուն ճակատը անմատչելի ծակեր կան՝ որոնք իբր դուռ կամ պատուհան կը ծառայեն այդ ժայռերուն մէջ փորուած մեծ երկայարկ սենեակներուն։ Այդ սենեակները, որ ետքէն աղաւնետան փոխուած են, կարծես վիմափոր լաբիւրինթոսներ են, տարածուած վանքին տակը, Խաչ լեռն ի վեր։ Անոնք հաւանաբար ճգնարաններ եղած են հին դարերու, կամ ստորերկրեայ վանք մը՝ հալածանքի օրերուն շինուած։*

*Այդ սենեակներէն անոնք որոնք կը գտնուէին վանքին տակ վերջէն ապաստանի անքոյթ վայրեր եղած են, բարբարոսութեան շրջաններուն, իսկ աւելի վերջերը գործածուած են իբր շտեմարան ցորենի, իբր մառան և մթերանոց։*

*Անոնց մուտքը կը գտնուէր վանքին բակին մէջ։ Առաջնորդող նրբանցքը, ի հարկին կը գոցուէր, երկաթեայ լեսանի վրայ դարձող խոշոր երկանաքարով մը։ Անկից վար, բնական սանդուխներով կ'իջնուէր, մինչեւ ձորին վրայ բացուող լուսամուտներով լուսաւորուած սենեակները (Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան,* Ընդ. Օր. 1928, 222-3)։ *Իսկ Խաչ-լերան տակ գտնուածները կը ծառայէին իբր աղաւնետուն։*

*Այս լեռը որ կ'իյնար Ս. Կարապետի ետեւը, արեւելեան կողմը, աւանդութիւններով առլցուն վայր մը եղած է, սկսելով իր անունէն որ բաւական յատկանշական է։ Հայերը՝ կ'ըսէին թէ Խաչ լեռ կոչուած էր վասնզի Լուսաւորիչ լերան ծայրը սարի մը վրայ, Ս. Կարապետի պարիսպին ճիշդ ետեւի կողմը կանգնել տուած էր խաչ մը, որ շինուած էր միակտուր ժայռէ մը։ Ժայռին ստորոտը գրեթէ եռանկիւնաձեւ յարդարուած էր իբր յատակ՝ որուն վրայ կը բարձրանար պատուանդանը՝* 2,33 *մէթր բարձր, ճակատը* 3,60 *մէթր լայն։ Ճակատը քանդակուած կար խաչանշան մը, որուն տակ հինգ տող խոշոր երկաթագրով որոշ գրուած էր* «Յիշատակ է Սբ. Խաչըս Գօջ(1) Գրիգորին, Մարտիրոս Ղալֆա ՌՄԼԵ (=1786) օծումէն Ուիլիսի ԻԸ.»։ *Պատուանդանին քովը կայ փոքրիկ սալայատակ մը ուր բարեպաշտներ կու գային մոմ վառել կամ փակցնել պզտիկ խորանաձեւ խորշի մը մէջ։ Այս պատուանդանին վրայ ժամանակաւ բարձրացած է եղեր քառաթեւը որ վերջը գոյութիւն չունէր։ Քրիստոնէական այս կոթողին քով կար խաչի կտոր մըն ալ ժայռի մը վրայ տնկուած, փուռ քարէ,* 97 *սանթիմ բարձր,* 77 *սանթիմ լայն և* 27 *սանթիմ հաստ, ուղղանկիւնաձեւ խաչքար մը՝ մօտ դարերու գործ, որուն երեք թեւերը կը պակսէին։ Խաչին մօտերը կը գտնուէին միակտուր ժայռէ կամ ժայռի մէջ փորուած գերեզմաններ, թերեւս շիրմաբնակներու կայաններ։*

*Ս. Խաչ լերան մօտերը կային նաև եկեղեցիներու և մատուռնե-*

(1) *Յար. Նշանեան* (Մասիս, 1898, *թ.* 83) *այս բառը կը կարդայ* գրիչ *և կ'ըսէ թէ Գրիգոր անուն Եւքառացին «եաղըճը» մականուամբ ապրած է ԺԸ. դարուն։*

րու աւերակներ։ Քարափոր գերեզմանները ցոյց կու տային արդէն թէ հոն այդ լեռնադաշտը եղած է շէն մը կամ բնակավայր մը, ամենամեծ հաւանականութեամբ՝ վանք մը։ Աւանդաբար ժողովուրդին այդ վայրին ընծայած յարգանքը, Խաչ լեռ անունը, հին խաչի մը Լուսաւորիչէն կանգնուած ըլլալու աւանդութիւնը և հոն նոր ժամանակներու մէջ կանգնուած օծեալ խաչերը, ապացոյցներ են թէ հոն սրբավայր մը եղած էր ամենահին ժամանակներէ սկսեալ։ Յոյն աւանդութիւնը կը պահէր նաև յիշատակը կամ անունը այդ վանքին։ Ան կը կոչուէր Տախիյարխոն (Ս. Հրեշտակապետ), և որ հաւանօրէն կործանած էր Ժ. դարուն՝ իսլամներու ձեռամբ։

Կեսարիոյ վերաշինութենէն և Յոյներով և Հայերով վերաբնակուելէն յետոյ, Յոյները մօտակայ Ս. Եղիա լերան սարահարթին վրայ, դէպ Արեւելք, Ս. Կարապետէն 20 վայրկեան հեռու, շինած են նոր վանք մը նոյն Տախիյարխոն անունով, իսկ Հայերը նոյնպէս անոր մօտ կառուցած են Ս. Կարապետի վանքը, որուն տաճարներէն մին, իրենք ալ կոչած են քրիստոնէական հնագոյն սրբավայրերէն մէկը համարուած այս վանքին անունով Ս. Հրեշտակապետ։

Իսկ այն կարծիքը թէ Սելջուկեանք Յունաց Ս. Կարապետի վանքը Ս. Հրեշտակապետի մատուռով միասին յանձնած են Հայոց (Մելքոն Աստուր, Երեքդարեան պատմութիւն Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ Պալաթու, 1627-1931, էջ 97) կամ Յունաց պատկանող այս վանքը ԺԲ. դարու Հայ գաղթականներ սեփականելով՝ ծաղկեցուցած են յաջորդ դարերուն (Բնաշխարհիկ Բառարան) ո՞րքան ճիշդ է, չեմ գիտեր, վասնզի ապացոյցներ կը պակսին։ Հայկական վանքը ԺԳ. դարու սկիզբէն սկսեալ կը յիշուի վաւերագիրներով։ Անոնցմէ առաջինն է ձեռագիր Աւետարան մը, գրուած ի Թոմարզա Գրիգոր քահանայի մը ձեռամբ Հայոց ՈԾԵ (=1206) թուականին և աւարտած Յունուար ամսոյ 3ին Ուրբաթ օրը «ի գաւառս Կեսարիոյ Կապադովկեցոց **՚ի հռչակաւոր անապատիս սրբոյ Կարապետի Յովհաննու** եւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ սրբոյն Թէոդորոսի եւ սրբոյն Մեռկերիոսի եւ այլ բազմահաւաք սրբութեանց» Ազարիա եպիսկոպոսի վերատեսչութեան տակ։

Անկարելի է մտածել թէ նորահաստատ վանք մը «հռչակաւոր անապատ» կոչուած ըլլայ, ուստի կը խորհինք թէ անիկա արդէն առնուազն ԺԲ. դարուն պէտք էր գոյութիւն ունեցած ըլլար, առաջ քան Խաչակրաց այդ կողմերը երեւալը (տես վերը, էջ 488 և 507)։ Աւանդութեան մը համաձայն Խաչակիրները բնակած են Ֆրէնք Տէրէսի ձորին երկու կողմերը քարաժայռերու մէջ փորուած սենեակներու մէջ (1), և անոնց առջև գտնուող գետնափոր ուղիէն, — որ

(1) Այս սենեակներէն ոմանց վրայ փորագրուած լատինական գիրերը և խաչի նշանները (տես Սերովբէ Աքհ. Պուրմայեան, Հայ Խօսնակ, 1925, էջ 68) և Ֆրէնք Տէրէսի կոչումը այն կարծիքը տուած է ոմանց թէ անոնք նոյնիսկ Խաչակիրներէն պեղուած են, սակայն ատիկա բնաւ հաւանական չէ քանի որ առժամեայ բնակութեան մը համար այսքան տաժանագին և այսքան երկար ու համբերատար աշխատութիւն պահանջող բնակավայրեր շինելու Խաչակիրները ո՛չ պէտք ունէին և ո՛չ ալ ժամանակ։ Անոնք կրնան օգտուած ըլլալ այդ վաղեմի ճգնարաններէն, առժամապէս հոն բնակելով։



վանքէն ներս դէպի մատուռը երթալու համար կ'երկարի —, վանք մտնելով Ս. Կարապետի մասունքները գողնալու փորձ մը ըրած են, բայց չեն կրցած իրենց նպատակին հասնիլ, վասնզի ներսէն ջրամբարի ջուրով զանոնք ողողած և փախցուցած են (Սերովբէ Աքհ. Պուրմայեան, Հայ Խօսնակ, 1925, էջ 68)։ Եթէ այս պատմութիւնը հաստատուած ըլլար, շատ բան պիտի ճշդուէր, սակայն դժբախտաբար միայն աւանդութիւն մըն է։

Ինչ որ ստոյգ և վաւերական է սա է որ 1206էն յետոյ Ս. Կարապետը Հայոց սեփական մայրավանք մըն էր և կը յիշատակուէր ան, բազմաթիւ ձեռագիրներու մէջ, իբր «հրաշալի Ս. Աթոռ սրբոյն Յովհաննու Կարապետին» (1438), «մեծահռչակ սուրբ Ուխտ ի դուռն Կարապետի» (1553), «Ս. Կարապետի Մեծի Ամլորդոյ հռչակաւոր սբ. վանքը» (1560), «հռչակաւոր վանքը Ս. Կարապետի»(1574) և այսպէս միշտ անընդհատաբար մինչև մեր օրերը։ 1617-1618էն ունինք ականատեսի մը՝ Սիմէոն Դպիր Լեհացիի նկարագրութիւնը որ ոչ նուազ շահեկան է։

Ան կը պատմէ թէ այցելած է «Ս. Կարապետ որ էր ի վերայ բարձր լերան, զմպէքաշէն մեծ եւ փառաւոր, որ ամէն քաղաքն առջեւն կ'երեւէր: Եւ վանաց առջեւն լայն եւ ընդարձակ դաշտն եւ մեծ օվան որպէս Խարբերդուն. եւ ամէնն շէնցիք եւ գեղօրայք են հայի. եւ եկեղեցիք եւ վանօրայք շէն: Ս. Կարապետու վանաց ներքեւէ կ'ելնէր պաղ ջուր եւ վազէր ի դաշտն գետանման: Եւ յոյժ զարմանալի շէնք ունէր վասն զի վիմափոր էր եւ ներքեւն մինչեւ ի քաղաքն մաղարայք. օթեւանք բազումք եւ տեղիք ճգնաւորաց որպէս Տորոսու լեռան ի Կոնիայ կամ Մանքէրմանու Բէչէրանին, այս է գետնափորքն: Եւ ասեն թէ աստ էր սուրբ մարմինն եւ ասեն զկէսն առեալ Ղեւոնդ ետ Լուսաւորչին մերոյ» (ՀԱ. 1935, 93)։

Այս նկարագրութենէն որոշ կ'երեւայ թէ վանքը ԺԷ. դարուն սկիզբը արդէն ունէր հոյակապ շինութիւն մը։ Սակայն դժբախտաբար վանքին մէջ գտնուող վիմագրական արձանագրութիւնները և տապանագիրները որոնք խնամով հաւաքուած են Տրդատ եպ. Պալեանէ, չունին հնութիւն։

Այդ արձանագրութիւններուն հնագոյնը որ 1727-1729 թուականը կը կրէ և աւելի հնագոյն շէնքի մը — ան որ Սիմէոն Լեհացին տեսած էր — կը պարունակէ, կը գտնուէր վանքին եկեղեցւոյն արտաքին դրան արեւելեան պատին վրայ և էր հետեւեալը.

«Յիշատակ է դուռս Կեսարացի ի գիւղէն Վանք գիւղէ մահտեսի Սարգիս Գալճային, որ ի թվին ՌՃՀԶ. (=1727) եկն ի Կեսարիա թղկն գործոց եւ տեսեալ զհնութիւն այսմ Տաճարիս, ուխտ ետ անձին իւրում թէ ի զալն ի Ստամպոլ խնդրիցէ հրաման ի թագաւորէն վասն նորոգութեան սորին, որ եղեւ իսկ եւ կատարեցաւ, ողորմութեամբն Աստուծոյ բարեխօսութեամբ Սրբոյ Յովհաննու Կարապետին: Եղիցի ողորմութիւն Աստուծոյ ի վերայ մահտեսի Սարգիս Գալճային եւ որդւոյն մահտեսի Գէորգին եւ տիրացու Աբրահամին եւ մօր նոցին եւ հանգ. ծնողացն մահտեսի Յոհաննէսին եւ մահտեսի Հեղինէին, թվին ՌՃՀԸ» (= 1729)։ Զարմանալի է որ նոյն թուականով Տրդատ եպ. Պալեան գտած է 10 խաչքարեր, որոնք իրենց նմաններուն մէջ հնագոյններն են։ Ասոնցմէ վեցը որոնք եկեղեցիին արտաքին պատին վրայ զետեղուած են, ասոնք են.

1.— «Խաչս կառուցաւ Սբ. Նշանի, եւ առ Քս. բարեխօսի, մհի Անտոնի որդի, տիրացու Կարապետի, է յիշատակ անջնջելի, ննջեցելոցն ամենայնի, բազմաշխատ եղեւ այս մենաստանի, ՌՃՀԸ. թուականի» (= 1729):

2.— «Հիւսն պայծառ մեծարգոյի,
Զի մնի Միքայէլ կոչի,
Որ մականուամբ Ղայեա օղլի,
Բազմաշխատ եղեւ այս մենաստանի,
Որ է գիւղէն յեւքարացի,
Այս խաչս օծել ետուր յիշատակ անջնջելի,
Տէրն Քրիստոս վարձատրեսցի... հրաշ դասաս..նի,
Նորոգեցաւ յայսմ ամի. թվ. Հայոց ՌՃՀԸ» (= 1729):

3.— Յիշատակ է Սբ. խաչս Եսայի որդի Յակոբ եւ կողակցւոյն Նիւլվարդին հոգւոյն: Յիշատակ է Սբ. խաչս Տաշնի Յարութիւն Ղալճային ծնողացն հոգւոյն, թվին. ՌՃՀԸ» (1729):

4.— «Յիշատակ է Սբ. խաչս Պալթա օղլի Ղարապէկին հօրն եւ մօրն հոգւոյն ի դուռն Ս. Կարապետի, թվ. ՌՃՀԸ» (= 1729):

5.— «... Քարաթեւի, որ եւ օծեալ խաչ կանգնեցի, շինուած մեծի հոյակապ Արամազեան թվականի ՌՃ եօթանասնի, ուր ի վերայ մասանց դասի, բազմաշխատ եղեւ այս մենաստանի։ Տէրն Քրիստոս վարձատրեսցի, որ է Պետրոս վարդապետի, որ է յերկրէն Կուռինեցի, է յիշատակ անջնջելի, ննջեցելոցն ամենայնի, ընդ երջանիկ հայրապետաց յաջակողմեան... յինի» :

6.— «Յիշատակ է սբ. խաչս Քաղկցի ոսկերիչ մնի Մուրասին հօրն եւ մօրն եւ կողակցւոյն ննջեցելոց եւ կենդանեաց հոգոյն ի դուռն սբ. Կարապետայ, թվին. ՌՃՀԸ. (=1729) նորոգեցաւ տաճարս այս»:

*Իսկ երկուքը Ս. Կարապետ գերեզմանի մատուռին մէջ կը գտնըւին։ Առաջինին արձանագրութիւնն է.*

«Խորանս այս Սուրբ եւ դուռն երկնի,
Կերտեցեալ յիշատակ կանգնի,
Դստեր Էքմէքնի Սէճէրի,
Որ է գեղջիւ Տարսիախցի,
Որոյ անունն էր Տիրունի,
Փոխեցեալ ի կենաց աստի,
Եւ Մարիամ իւր դստերի,
Հանգուցելոցն առ Քրիստոսի,
Արդ ընթերցուք այսմ տառի,
Մի դանդաղիք սիրով սրտի,
Խնդրել հոգւոց սոցա բարի,
Ջարքայութիւն երանելի:
թվին. ՌՃՀԸ.» (=1729):

*Այս արձանագրութիւնը ինչպէս կը տեսնուի շինութեան հետ կապ ունի։ Իսկ երկրորդին՝*

«Կանգնեցաւ՝ Սբ. խաչս բարեխօս առ Քս. վասն հոգւոյ Տէր Կարապետին եւ կողակցւոյն Վարդենիին եւ որդւոյն սիրացու Մկրտչին. թվ. ՌՃՀԸ.» (=1829):

*Առանցմէ զատ Տրդատ եպ. նոյն թուականով գտած է երկու խաչքարեր Ս. Հրեշտակապետ տաճարին վերնատան գետինը որոնք հաւանօրէն ուրիշ տեղէ հոն բերուած պիտի ըլլան վերնատան շինութեան ատեն։*

*Ահա անոնց բովանդակութիւնը.*

1.— «Յիշատակ է խաչս մնի Սուլթան Պային, եւ կողակցւոյն Նար Խաթունին, եւ որդւոյն Գաբրիէլին, Սարգսին եւ կողակցին իւրոյ եւ որդւոյն ամենայն ննջեցելոցն հոգոյն ի դուռն Սբ. Կարապետի վանից. թվ. ՌՃՀԸ (= 1729):

2.— «Յիշատակ է Սբ. խաչս Յոլկէր Եուսումին որդին Սարգսին... որդին Պարեամին, ննջեցելոցն, ի դուռն Ս. Կարապետին. թվ. ՌՃՀԸ»:

*Այս խաչքարերը և արտաքին պատին վրայ գտնուածներու չարքին զետեղուած ուրիշ անթուական մի քանի խաչքարեր*(1) *որոնք որոշապէս 1729 թուականին կատարուած վերաշինութեան սատարողներուն համար կանգնուած են, կը կազմեն հնագոյն յիշատակարանները վանքին, առանց հաշուելու եկեղեցական գոյքերու մէջ գըտնուած գաւազան մը*(2)*, սկիհ մը*(3) *և օրբատուփ մը*(4) *որոնք աւելի հին թուականներուն են սակայն որոշ չէ թէ Ս. Կարապետի վանքին կը պատկանէին, թէև անոր գանձատան մէջ կը գտնուէին։*

*Տրդատ եպ. Պալեան վանքին հիւսիսային* Էճէէրէ Գաբուսու *կոչուած դրան արտաքին վերի շեմին վրայ հետեւեալ թերի ընթեռնելի արձանագրութիւնը գտած է, որ դժբախտաբար ոչ մէկ լուսաբանութիւն կու տայ։*

«Ընդ արմս այս է... աւագոյն մենաստան է, Ս. Կարապետ յորչորջի... շինուած մեծի հոյակապի ... Ստեփաննոսի եղեւ...»։

*Եթէ Ստեփաննոսը այն եպիսկոպոսն է որ այս վանքին շինութեան մէջ դեր կատարած է, այս արձանագրութիւնը շատ նոր 1798–1824 թուականներուն կրնայ պատկանիլ։*

*Յիշատակարաններու այս աղքատութեան բերմամբ վանքին պատմութեան մասին մեր ունեցած ծանօթութիւններն ալ չափազանց սակաւ են և գրեթէ պատահական։*

*Վանքին Ս. Հրեշտակապետի տաճարը որ Մատթէոս եպ. Գարամանեանի* (1780–1798), *և Ստեփանոս եպ. Օֆլազեանի* (1798–1825) *աշխատութեամբ և ջանքով կառուցուած է, ունի միջակ մեծութիւն և բարձրացած է քառանկիւնաձև չորս սիւներու վրայ։ Տաճարին երեք սեղանները ամբողջութեամբ, եկեղեցիին ներքին պատերը և սիւները գետնէն երեք կանգունի չափ բարձրութեամբ, Քէօթահեայի հին յախճապակեայ քարերով զարդարուած էին,* 1797 *թուականին կեսարացի Յարութիւն Ամիրայ Պաշպազիրկեանեանի որդի Յովհաննէս ա-*

---

(1) — «Յիշատակ է Ս. խաչս Գէորգի որդի մեղաւոր եւ անարժան Պէք Տաղին ի դուռն Ս. Կարապետի»:

— «Յիշատակ է յուսամուտ Եւքառացի Սաղիր օղլուի Պինէք Ղալճային եւ կողակցոյն Մարիամին»:

— «Յիշատակ է Ս. խաչս Սարգիսի որդի Նիկողոսին եւ համօրէն ննջեցելոցն ի դուռն Ս. Կարապետի»:

(2) *Գաւազանին յիշատակարանն է* «կազմեցաւ գաւազանս Յակոբ վարդապետին թուին ՌԾԲ (= 1603). Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա աշխատողաց սորա. ամէն»:

(3) *Սկիհին վրայ գրուած էր* «յիշատակ է Կեսարացի Սինանու որդի Կարապետ աղայի. թվին ՌՀԲ» (=1623)։

(4) *Օրբատուփին վրայ կը կարդացուէր.* «յիշատակ է խորհրդատանս, Տէշյէք պապուն, եւ կողակցուն Մարիամին, Խամպակէ թուի սուրին, ի ձեռն Տէր Գրիգորին, թվին ՌՃԼԹ.ին» (= 1690)։

միրայի ծախքով(1), ինչպէս կը հասկցուի մարմարեայ յիշատակարանէ մը որ զետեղուած էր եկեղեցիին հիւսիսային կողմը փոքր այն դրան վրայ, որ կը տանի Ս. Կարապետի գերեզմանը։

Ահա այդ յիշատակարանը.

«Տր. Յս. Քս. Ած. թվ. ՌՄԽԶ (1797) Մարտ Ա.
«Հոգին սուրբ, որ աղբիւր բարի,
Եհեղ զսէր առաջնորդի,
Տն. Մատթէի արհի պետի,
Շինեալ ցտուն Տն. ամենի:
Այլ յախնապակն է յիշատակ,
Քաջ իշխանին հանճարունակ,
Մահտեսի Յովհաննէս անուն նորա,
Պաշպազիրկեան անուանի նա,
Ջեկեղեցիս պետ Հրաշտակաց,
Ի զարդ հոգւոյն գեղազարդեաց,
Ննջեցելոց եւ կենդանեաց.
Խնդալ ի խնամ Տեառն փառաց:
Կենդանին է քաջ Ամիրայն,
Մհի Յարութիւն հայրն նորայն,
Վարդակոկան զաւակք նորայն,
Կարապետ, Սարգիս մահտեսիքն այն,
Մահտեսի կինն օրհնեալ Եւայն,
Տալիթայ Մարիամ դստերք նորայն,
Հանգեալ պապքն Յովհաննէս Սարգիս,
Կարապետ Յակոբ, եւս ի շիրիմս.
Նազլու Հռիփսիմ Եղսա դստերք,
Պարոն Յակոբ...
Որդ յիշեսցէ Տէրն փառաց,
Զկենդանիս եւ զննջեցեալս,
Եւ որք հրճուիք զարդիւք Ս. Տանն,
Ընթերցարուք յիշեցման տառս,
Երկրպագուք Սր. Խաչի Տեառն,
Հայր մեղայիւ օրհնէք զպատճառն,
Ստեփան, Կարապետ, Զաքարեայ
Վարդապետք են Տանս գործունեայ:

Յախճապակեայ քարերէն վեր պատերը ինչպէս նաեւ կանանց վերնատան երկու կողմի պատերը ծածկուած էին, ոսկեզօծ շրջանակներով երկու կարգ պատկերներով։

Ասոնց երկու դասերուն մէջ եղած վարի կարգինները, կը ներկայացնէին մեր առաջին վեց հայրապետներու զգեստաւորուած պատկերները, իսկ վերի կարգինները և եկեղեցիին մէջինները՝ Ս. Գրոց, Աւետարանական պատմութեանց, և նշանաւոր սուրբերուն։ Այնպէս որ Ս. Հրեշտակապետի տաճարը իր ամբողջութեան մէջ կը ներկայացնէր հետաքրքրական հնութեանց հաւաքածոյ մը, իր արժէքաւոր յախճապակեայ զարդերով, հին նկարչութեան պատկանող այս պատկերներով և անոնց շրջանակներով, ինչպէս նաև եկեղեցիին խաչկալներուն և ամպիոնին քանդակազարդերով։

Ս. Հրեշտակապետի տաճարին հիւսիսային կողմը կը գտնուէր Ս. Կարապետի գերեզմանը որ առանձին եկեղեցի մըն էր մատուռով։

Ըստ Սերովբէ քհ. Գուրմայեանի (տես Հայ Խօսնակ, 1925, էջ 66) վանքին մեծագոյն հնութիւնը կը կազմէր այս մատուռը որ կ'ամբող-վանքին մեծագոյն... 

Ս. Կարապետի եկեղեցիին պատերը ձեղունն ի վեր մարգարէներու գեղակերտ պատկերներով զարդարուած էին։ Այս փոքր եկեղեցիին աջակողմեան և ձախակողմեան երկու փոքր սեղաններուն մէջտեղն էր սատափեայ դուռը, ուրկէ կը մտցուէր Ս. Գերեզմանը պարունակող մատուռը, որ աւելի փոքր էր և ունէր միայն պատարագամատոյց սեղան մը։

Ս. Կարապետի գերեզմանը մատրան հիւսիսային պատին կից էր, ընտիր մարմարեայ տապանաքարով և սեղանաձեւ երեք ստիճաններով։ Վրան շինուած էր փառաւոր և ճարտարարուեստական զարդերով քանդակուած փայտեայ և ամբողջութեամբ ոսկեզօծեալ ամպհովանի մը, չորս սիւներու վրայ կանգնուած կաթողիկէով, ոսկեդրուագ նկարներով զարդարուն։ Հաւանօրէն Ս. Գերեզմանին մատուռը վանքին հնագոյն շինուածն է։ Ըստ Սերովբէ Աքհ. Գուրմայեանի (Հայ Խօսնակ, նոյն) կ'աւանդուի թէ Ս. Գր. Լուսաւորիչ՝ Ս. Կարապետի նշխարները ամփոփուած այս մատուռին մէջ ձեռնադրուած է։ Պատմական ոեւէ փաստ գոյութիւն չունի ասիկա հաստատող, սակայն այս աւանդութիւնն իսկ ցոյց կու տայ թէ անիկա հնագոյն մասն էր վանքին, որուն շուրջը հիւսած էր ժողովուրդը աւանդութիւններ։ Հնութեան կարգով անշուշտ երկրորդն է անոր առջեւ գտնուող եկեղեցին որուն երկու սեղաններուն մէջտեղէն կը մտցուէր այս մատուռը և ամէնէն վերջը շինուած է իր Ս. Հրեշտակապետի տաճարը։

Ս. Կարապետի գերեզմանը ունէր յիշատակարան մը իբր տապանաքար, յօրինուած Նալեան Յակոբ Պատրիարքէն դիմառնական ձեւով, այսպէս.

(1) Այս անձը՝ 1794ին ալ նոյնպէս Քէօթահիոյ գեղակերտ յախճապակիներով գեղեցկապէս զարդարել տուած էր Երուսաղէմ Ս. Յակոբայ վանքին Ս. Էջմիածին անուն տաճարը իր անձնական ծախքով, ինչպէս կը հասկցուի նոյն տաճարին հիւսիսային պատին վրայ դրուած խաչքարի մը արձանագրութենէն (տես Աղաւնունի, Միաբանք եւ Այցելուք, էջ 365)։ Այս անձը նոյնպէս աշտանակ մը նուիրած է վանքին, 1801ին, ինչպէս կ'երեւայ հետեւեալ արձանագրութենէն.

«Յիշատակ է աշտանակս Պաշպազիրկեան մհի Յովհաննէսին, եւ որդւոյն մհի Կարապետին, մհի Սարգիսին, ի դուռն Կեսարիոյ Ս. Կարապետի վանիցն, յառաջնորդութեան Տն. Ստեփաննոսի Արհի եպիսկոպոսին. ի թվին ՌՄԾ» (= 1250 + 551= 1801)։

1799ին Ղուկաս կաթողիկոս Կեսարիոյ Առաջնորդ Ստեփան եպ.ի ուղղած մէկ թուղթին մէջ կը խօսի «վասն Պաշպազիրկեան մահտեսի Յովհաննէս ամիրայի փորձութեանցն ի յանդուգն այլազգեացն Կեսարիոյ» (Դիւ. Հայոց Պատմ. Դ. հտ. էջ 677)։ Դժբախտաբար միայն խորագիրը կայ, նամակին բնագիրը չկայ, որով կարելի չէ հասկնալ փորձութիւնը որուն կ'ակնարկէ նամակը։

«Որք ջերմեռանդ ըղձիւ՝ սիրոյ առ իս դիմեն,
Համայն ախտից շնորհիւ Փրկչին տեղ գտանեն,
Եւ որք բերի մտօք լրբին զուրկ ելանեն,
Զի չարաչար սիրով խնդրեն եւ ոչ առնեն:
Տէր Յովհաննէս Բաղիշեցին քաջիմաստ,
Ընդ Զիմառցի Յակոբ պետին ու նուաստ,
Շինման սորա եւ իմ պարտուցս եղեն շատ նպաստ,
Որ Սբ. Հոգւոյն լիցի նովաւ առագաստ»(1)

«1733 (ՌՉԼԳ) եւ Հայոց (ՌՃՁ) 1180:

*Տրդատ եպ. Պալեան* (Հայ Վանորայք, 15) *և Սերովբէ քհ. Գուրմայեան* (Հայ Խօսնակ, 1925, 67) *կը կարծեն թէ այս յիշատակարանը զետեղուած է իբր կնիք հաստատութեան Կոլոտ և Նալեան Պատրիարքներու կողմէ երբ անոնք ուխտի եկած են և ստուգած Ս. Կարապետի նշխարաց գոյութիւնը, սակայն Կոլոտ երբեք Կեսարիա այցելած չէ, այլ միայն Նալեան, իր երիցագոյն աշակերտը,* 1731*ին Սարգիս եպ. Սարաֆեանի հետ եկած և հոն մնացած է քիչ մը ատեն,*

*Ասիկա կը հաստատուի նոյն իսկ Նալեանէն որ իր հեղինակած* Վէմ Հաւատոյ *գիրքին —որուն տպագրութիւնը* 1733 *Փետրվար* 14*ին սկսած և* 1733 *օգոս.* 25*ին աւարտած է— յառաջաբանին մէջ կը գրէ.* «վասն որոյ ի թուին Քրիստոսի 1731 մինչ եղաւ յուղն Աւետարանին Քրիստոսի ի վերայ մեր, վասն այցելութեան Ս. Կարապետ վանիցն որ 'ի Կեսարիա. յորում ամի սկսեալն էաք զայս գործ՝ մնաց անկատար» : *Թէ ինչ պատճառով Նալեան գա-*



ՍԱՏԱՓԵԱՅ ԴՈՒՌ
Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ԳԵՐԵԶՄԱՆԻՆ

---

(1) *Այս ոտանաւորին մի քանի բառերուն փոփոխութեամբ մէկ ընդօրինակութիւնը գտած է Տրդատ եպ. Պալեան Թալասի Ս. Աստուածածին եկեղեցին պահուած ձեռագիր* Քարոզգիրքի *մը սկիզբը՝ պարապ թուղթի մը վրայ, տակը գրուած.* «Այս ոտանաւոր է Որբազան Յակոբ Պատրիարքին զոր շարադրեալ է ի վերայ Սրբոյն Կարապետի Գերեզմանին որ ի Կեսարիա»: *Տարբերութիւնները աւելի ընդօրինակութեան սխալներ կը թուին, ուստի չ'արժեր մատնանշել (Տես* Լոյս, 1905, *էջ* 827-828)։



*ցած է Կեսարիա, շատ որոշ է։ Ան զրկուած է աջակցելու Սարաֆեանին՝ վանքին պարտքը տալու համար, և ոչ թէ ստուգելու համար Ս. Կարապետի մասունքներուն գոյութիւնը, ինչպէս Էփրիկեան* (Բնաշխարհիկ Բառարան) *կ'ուզէ հաւատացնել, պատմելով թէ* 1737*ին Մատթէոս եպ. և իր աշակերտը Ստեփան վարդապետ մեծ դժուարութեամբ կը շինեն վանքին տաճարը, սեղանատունը, այգեստանը և այս պատճառով պարտքի տակ կը ձգեն և Ստեփան վրդ. կ'ստիպուի Կ. Պոլիս երթալ հանգանակութեան։*

«Այն ժամանակ տեղի ունեցած Պատրիարքական կռւոյն Կեսարացի հիւսանք մեծ դեր ունենալով՝ հասարակաց զայրոյթը գրգռած էին, ուստի ոմանք կը ժխտեն թէ Ս. Կարապետի մասունքը չկան անդ եւ թէ Մուշ կը գտնուին ամբողջովին: Ժամանակի Պատրիարքը Բաղիշեցի Յովհաննէսի Կոլոտ քննութեան կը ղրկէ իր աշակերտը Յակոբ Նալեան, սա գալով արկղի մը մէջ կը գտնէ մասունքը, եւ վրան Լուսաւորիչի եւ Ղեւոնդի կնիքները, չի համարձակիր քակել, կնիք մըն ալ ինքը կը զարնէ, յետոյ տապանի մը մէջ դնելով կը մեկնի եւ կը ջանայ հանգանակութեամբ վճարել վանքին պարտքը»:

*Այս պատմութիւնը սոսկ առասպել է, վասնզի բազմաթիւ ժամանակագրական սխալներ ունի։ Մատթէոս եպ. և իր աշակերտը՝ Ստեփան եպ. որոնք իրարու յաջորդած են,* 1780*էն* 1825, 1737*էն շատ վերջն են։ Յետոյ Նալեան Կեսարիա գացած է* 1731*ին և ո՛չ թէ* 1737*ին։ Իրողութիւնը սա է որ Կոլոտ Պատրիարքի քաջալերութեամբ իր երկու աշակերտները Սարաֆեան և Նալեան վանքը պարտքէ փրկած են և Ս. Կարապետի գերեզմանին վրայ այս յիշատակարանը դնել տուած իրենց անձնական ծախքով։*

*Այս մատուռը նորոգուած է* 1846*ին, Գաղատացի Յակոբ Սպ.ի* (1829–1865) *ատեն, ինչպէս կը տեսնուի սա յիշատակարաններէն որոնք տրուած են շէնքին արտաքին ճակատը՝ երկու կողմերը։*

*Աջակողմեանին պարունակութիւնն է՝*

«Հրաւէր սիրոյ յինէն առ ձեզ ով մանկունք իմ, Փութացարուք զհետ կոչման հարսանեաց իմ, Նորոգեցաւ որպէս արծւոյ մանկութիւն իմ, Ձերբ Յովսէփայ որ ծաղկեցաւ պատմուճան իմ, Տեառն Յակոբայ արհի պէս Առաջնորդ իմ, Ձեռամբ սորա որ խնամածու հովուապետ իմ, Փոքր եմ թէպէտ եւ կրտսեր յեղբայրս իմ, Այլ զանձ շնորհաց ամփոփեալ կայ տես ի ծոց իմ, յամի հազար եւ երկերիւր թուականն իմ, Յաւել զհինգ եւ զիննսուն ի վերայ իմ, Յոյց զհաւատ զյոյս զսէր սիրելի իմ, Տուր ինձ զրաւ եւ ես տաց քեզ ըզշնորհս իմ»:

*Ձախակողմեանը դժբախտաբար ժամանակի ընթացքին մասամբ անընթեռնելի եղած էր։ Ինչ որ կը կարդացուէր սա էր.*

« . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . Հայր մեր բարի եւ խնամակալ
Զհոտ խմբից քաղցեալ սովու յարութիւն քոյ..., Եւ որ հեռուոց եւ ի մօտոյ զա-
ցոյց զսէր քոյ. Որք եկեալ եմք... շնորհիւ քոյ. Ընկալ զհաւատս
ւակունք քոյ, Տուր զխնդիր իւրաքանչիւր ըստ անուան քոյ,
յոյս մեր եւ սէր ի յաւանդ քոյ. Որպէս զիւղն Մարիամու ի պատիւ քոյ... զոտս
սրբոյ քոյ, Զի ջնջեսցին ..., մեղաց ըստ բանի քոյ:»

*Ս. Կարապետի գերեզմանը պարունակող մատրան յատակը և որմերը, ինչպէս նաև անոր առջևը գտնուող եկեղեցւոյն չորս կողմերը նոյնպէս զարդարուած էին հին յախճապակիներով, որոնք հաւանօրէն աւելի հին էին քան Ս. Հրեշտակապետի տաճարին մէջ գտնուածները, հետեւցնելով այս յախճապակիներէն մէկուն վրայ գտնուած*

սա յիշատակարանէն. «Յիշատակ է Ոսկանի որդի Մահտեսի Փանոսին եւ ընկերն Աբրահամին հոգոյն ի դուռն Սբ. Կարապետին, թվին ՌՄԶ» (=1757) (1):

Յախճապակեայ թանկարժէք նկար մը որ դուռի դրան քովի պատին վրայ զետեղուած էր և կը ներկայացնէր «Յիսուսի մկրտութիւնը Մկրտչէն» ներքեւը հայկական թուականով մը խորահանուած է Թուրքերու կողմէն և գրաւուած՝ իբր հնութիւն (Հմմտ. Սերովբէ քհ. Պուրմայեան, Հայ Խօսնակ, 1925, էջ 66, Ընդ. Օր., 1928, էջ 226): Հնագէտները այդ նկարը մինչև 600 հնչուն ոսկի գնահատած էին (Նոյն), դժբախտաբար ոչ ոք անոր թուականը նշանակելու փոյթ ունեցած էր: Մասնաւորապէս անոր Տրդատ եպ.ի ուշադրութենէն վրիպած ըլլալը բաւական զարմանալի է:

Ս. Կարապետի եկեղեցին և գերեզմանի մատուռը ուխտաւորներու այցելութեան առեն միայն կը բացուէր, ինչպէս Վարդավառի և Այլակերպութեան տօնին առթիւ, իբր տօն և յիշատակութիւն Ս. Յովհաննու Կարապետին:

Ս. Կարապետի մատուռը և անոր առջեւը գտնուող եկեղեցին ալ իբր կառուցուածք երբեք կարելի չէ սկզբնական և հին շինութիւններ համարել:

Նոյնիսկ հաւանական է մտածել թէ 1729ին նորոգութիւնը որուն հրամանը տուած էր Արքունի ճարտարապետ Սարգիս Գալֆան, կը վերաբերի այս մատրան և իր յարակից տաճարին, քանի որ Ս. Հրեշտակապետի տաճարը աւելի յետոյ կառուցուած էր: Արդարև գերեզմանի մատուռին մէջ գտնուած խաչքար մը որուն բովանդակութիւնը վերը մէջ բերուեցաւ, և որ կ'սկսի «Խորանս այս սուրբ եւ դուռն երկրի, կերտեցեալ յիշատակ կանգնի» բառերով, կը հաստատէ այս տեսութիւնը:

Նոյն տեղ կան նոյն թուականով ուրիշ խաչքար մը (2) եւ և 1753 թուականով ուրիշ մը (3) որ կրնան նոյնպէս 1729ի վանքին վերաշինութեան սատարողներուն պատկանիլ:

Ինչպէս դիտել տուած ենք արդէն վանքին մէջ գտնուած խաչքարերուն ստուար մեծամասնութիւնը այս 1729 թուականը ունին: Այնպէս որ վանքին շինութիւններուն մէջ աւելի հին թուականով շէնքի մը գոյութիւնը ենթադրելու կարելիութիւն չկայ:

Ուրեմն հաւանական է թէ Ս. Կարապետի եկեղեցին և անոր ետին գտնուող Սուրբին գերեզմանը պարունակող մատուռը վերաշինուած են 1729ին և յախճապակիներով զեղազարդուած՝ 1757ին:

1761ին այս երկու յարակից շինութիւնները իրարու միացնող անցքին վրայ զետեղուած է փայտի վրայ սատափ ագուցուած արժէքաւոր դուռը(4), որուն վրայ կը կարդացուէր սա յիշատակարանը.

«Յիշատակ է այս գեղեցկաշէն դուռն Սբ. Կարապետի տաճարին Պասմանի

(1) Պուրմայեան քհ. ՌՄԽԶ (=1797) կը կարդայ հաւանօրէն սխալ ընթերցումով:

(2) Նոյնպէս վերը յիշատակուած:

(3) Տես Առաջնորդներու գաւազանագիրքի բաժինը, Դաւիթ եպ. Երեւանցիի (1746-1778) մասին գրուածը:

(4) Թուրքերը Ընդհ. պատերազմին յափշտակած և Կ. Պոլիս փոխադրած էին այս դուռը:



Պետրոսի որդի մահտեսի Աստուածատուրին, եւ հանգուցեալ եղբօրն Խաչեայ, եւ մօրն Եւայի, ի թուին ՌՄԺ» (1761):

Եւ վերջապէս 1846ին նոր նորոգութիւն մը կրած էին այս շէնքերը Յակոբ եպ. Գաղատացիի օրով, ինչպէս ցոյց կու տային երկու արձանագրութիւններ:

Ս. Հրեշտակապետի տաճարը, ինչպէս նաև Ս. Կարապետի գերեզմանի մատուռը և անոր առջև գտնուած եկեղեցին, շրջապատ-



Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ԳԵՐԵԶՄԱՆ

ուած են վանական ուրիշ շինութիւններով, որոնք երկու մասի բաժնուած են, ներքին դուռով մը: Այս երկու բաժանումներէն հիւսիսային մասին մէջ կը գտնուէին Ս. Հրեշտակապետի տաճարը և Ս. Գերեզմանը, և եկեղեցին, երկյարկ միաբանական սենեակները, Առաջնորդարանը իր սենեակներով, հիւրանոցը, չորատունը, նոր մատենադարանը, նախկին ճեմարանը, և անոր ննջարանը, մառաններ,

*խոհանոց, սեղանատուն, հացատուն, փուռ և ձիթատուն*(1)։

*Հարաւային մասին մէջն էին ուխտաւորներու սենեակները, 93 հատ, ութը թաղերու բաժնուած.* 1. Սեղանատան թաղ, *որ կը պարունակէր* 7 *սենեակներ*, 2. Սարմըսագլը թաղ՝ 13 *սենեակներով*(2), 3. Թօլաս թաղ՝ 7 *սենեակներով*, 4. Նոր թաղ՝ 14 *սենեակներով*(3), 5. Գայսէրի թաղ՝ *երկյարկ* 21 *սենեակներով*(4), 6. Չէշմէ թաղ՝ 6 *սենեակներով*, 7. Չէյթուն թաղ՝ 16 *սենեակներով։ Ասոնցմէ Գայսէրի և Չէշմէ թաղերը ի հիմանէ վերաշինուած են* 1894–1900 *թուականներուն, և Չէյթուն թաղը նորոգուած է* 1890*ին ժրաջան Տրդատ եպ. Պալեանի առաջնորդութեան շրջանին։*

*Ասոնցմէ զատ կար փոխ-վանահայրի սենեակ մը, սեղանատուն մը, խոհանոց, մայրապետանոց, վիմափոր մեծ ամբարանոց, մառան, երեք մանր սենեակներ, մեծ ջրամբար մը, և երկու մշտահոս աղբիւրներ*(5)։

*Վանքին հիւսիսային կողմը,* Էմէրէ Գաբուսու *կոչուած դռնէն դուրս, պարապ գետին մը, որ* 7500 *քառակուսի ճարտարապետական կանգուն տարածութիւն ունէր,* 1891*ին Տրդատ եպ. Պալեան ճարտարութեամբ մը վանքին պարիսպին մէջ կ'առնէ, պատրուակելով թէ այդ գետինը վանքին գերեզմանատունն է և հին փոքր մատուռ մը ունի իր վրայ։ Այս ընդարձակ գետնին վրայ, կը կառուցանէ վանքին նոր վարժարանը* 1900–1903 *թուականներուն, մեծ ու բարձր սրահով և* 12 *դասարանով և տեսչարանով, գծագրատունով, հիւրանոցով,*

*ուսուցչաց համար վեցական սենեակներէ բաղկացեալ երկու տուներով, երեք բարձրադիր և օդաւէտ ննջարաններով, երկու սալայատակուած զբօսավայրերով, ուսուցիչներու և ուսանողներու յատուկ սեղանատուններով, խոհանոցով, մշտահոս աղբիւրով մը, որոնք համակ քարուկիր են։*

*Այս նոր շինուած վարժարանին առաջին դրան ճակատին վրայ կը կարդացուէր հետեւեալ արձանագրութիւնը.*

«Յամի Փրկչին 1903 թուին, Հայոց ՌՅԾԲ. շնորհիւն Աստուծոյ ի հիմանէ նորոգ կառուցաւ Ս. Կարապետի վանուց վարժարանս, հանդերձ սենեկօք, ննջարանօք, սեղանատամբ եւ յարակից զբօսավայրօք, ի վայելումն Հայ մանկըտւոյն, ի հայրապետութեան Ս. Էջմիածնի Տ. Տ. Մկրտչի Խրիմեան Ս. Կաթողիկոսի ամենայն Հայոց, ի Պատրիարքութեան Երուսաղիմայ Տ. Յարութիւն Ս. Արքեպիսկոպոսի Վեհապետեան, եւ ի Պատրիարքութեան Կ. Պոլսոյ Տ. Մաղաքիա Ս. Արքեպիսկոպոսի Օրմանեան, եւ նախաձեռն ջանիւք եւ աշխատութեամբ վիճակիս Կեսարիոյ Առաջնորդ-Վանահայր Տ. Տրդատ եպիսկոպոսի Պալեան, արդեամբք եւ ծախիւք համայն բարեպաշտ ժողովրդեան վիճակին Կեսարիոյ, օժանդակութեամբ Թալասու Կիւլպէնկեան ազնուատոհմիկ գերդաստանի երկուց հարազատացն բարեյիշատակ Սերովբէ եւ Սարգսի եւ արժանաժառանգ որդւոց նոցա: Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի. 1903. ՌՅԾԲ»:

*Այս նորակառոյց շէնքը փոխադրուեցաւ* 1903 *Սեպ.* 1*ին վանքին մէջ Տրդատ եպ. Պալեանի նախաձեռնութեամբ* 1888*ին բացուած վարժարանը, որ նախապէս կը գտնուէր վանքին հիւսիսային բաժնին՝ ճեմարան կոչուած շէնքին մէջ, որուն վրայ կը տեսնուէր հետեւեալ յիշատակարանը.*

«Կարողութեամբն Աստուծոյ ի հիմանէ կառուցաւ ժառ. վարժարանս հանդերձ գրադարանօք եւ նորոգեցան վերին ննջարանն եւ դասարանք, դրամական մասնակցութեամբ բարեպաշտ Հայ ժողովրդեան վիճակիս, եւ մեծաւ ջանիւք բարեխնամ Առաջնորդ-Վանահայր Տ. Տրդատ վարդապետի Պալեան Թալասցւոյ, ի վայելումն եւ յառաջդիմութիւն Հայ մանկտւոյն» 1888. Մայիս 15. ՌՅԼԷ».:

*Տրդատ եպ. Պալեանի նախաձեռնութեան մէկ արգասիքն էր նաև մատենադարանին կազմութիւնը, որ կատարուած էր* 1890*ին։* 1914*ին պատերազմին առեն, ան կը պարունակէր* 200*էն աւելի ձեռագիր մատեաններ և* 2000*էն աւելի տպագիր հրատարակութիւններ։ Այսպէս վանքն դարձած էր Փոքր Ասիոյ սրտին վրայ իսկապէս լուսաւորութեան կեդրոն մը և կը կատարէր կարեւոր դեր մը, որուն պիտի անդրադառնամ կրթական բաժինին մէջ։*

*Վանքը ունէր բաւական մշակելի հողեր և կալուածներ, ինչպէս երեք ջրաղացքներ, որոնց մին՝ Հէօնկէլէ ըսուած տեղը, որ երեք ժամու չափ հեռու է վանքէն, երկրորդը՝ Տէնտիլ՝ և երրորդը Գուրհան անուն գիւղերուն մէջ։*

*Հողերը* 5-600 *արտավայրի չափ էին, կէսը վանքին առջև, միւս կէսը Հէօնկէլէի ջաղացքին շուրջը*(1)։

*Այս հողերուն մէջ կային քանի մը կտորներ որոնք անմշակելի էին։ Նոյնպէս ունէր այգի մը և ճեհրինայ մը՝* Պայըր Պաղ *անունով,*

---

(1) *Զիթատան պահարանին վրայ զետեղուած էր կարմրագոյն քար մը, որուն վրայ քանդակուած էր Ս. Աստուածածինի պատկերը գիրկը Քրիստոս։ Անոր տակը գրուած էր.* «Յիշատակ է այս պատկերս, Ղալէմքեար Մարգարս փորեաց, ի թուին ՌՄԼԲ»։ *Արաբական թուանշանով նշանակուած տարեթիւը եթէ Հայկական թուական է, կը համապատասխանէ* 1232 + 551 = 1783 *Քր.ի թուականին, իսկ եթէ Հիճրէթի թուական է այն՝ ատեն կը համապատասխանէ* 1817 *թուականին, որ աւելի հաւանական է ընդունիլ, քանի որ Ստեփանոս Արքեպ.ի ձեռամբ կատարուած զանազան շինութեանց թուականին հետ կը յարմարի։*

(2) *Հաւանօրէն այս թաղը պէտք է կառուցուած ըլլայ* 1848*ին, վասնզի սենեակի մը վերին շէմին վրայ կը կարդացուէր.* «յիշատակ է Սարմըսախցի մհի Առաքէլի մայրն Մարիամ կառոյց իւր արդեամբքն. յամի Փրկչին 1848»:

(3) *Այս թաղը շինուած է* 1857*ին Ցակոբ եպ. Գաղատացիի Առաջնորդութեան ատեն։ Արձանագրութիւնը տես էջ* 941։

(4) *Գայսէրի թաղը շինուած էր Տրդատ եպ. Պալեանի ձեռքով* 1887*ին։ Առաջին դրան վրայ գրուած էր.* «Տրդատ վարդապետ Պալեան Թալասցի, Առաջնորդ վանահայր Կեսարիոյ 1887»:

(5) *Այս աղբիւրներէն մէկը շինուած էր* 1868*ին, ինչպէս կը հաւաստէր անոր յիշատակարանէն որ էր* «յիշատակ է աղբիւրս սրբոյն Կարապետի, ձեռամբ Կեսարացի Տիրինեան մհի Յովհաննէսի, եւ կողակցւոյն մհի Հռիփսիմէին եւ որդւոց մհի Կարապետին եւ մհի Նազարին, վասն իւրոյ կենդանեաց, եւ հոգւոցն ննջեցելոց. 1 Նոյեմբերի 1868». «Նորոգեցաւ յաւուրս Տրդատ վարդապետի. 1891»:

(1) *«Հէօնկէլէ»ի ջաղացքը և շրջակայ արտերը, գետին երկու կողմերը, Կիւլպէնկեանք նուիրած են վանքին (Մելքոն Աստաւր,* Երեքդարեան Պատմութիւն Ս. Հրեշտակապետ Եկեղեց. Պալաքու, *էջ* 97)։

գեղեցիկ ընդարձակ պարտէզ մը՝ Խաս Պախչէ անունով, և երեք ուրիշ ծառաստանիկ պարտէզներ իրարու գրեթէ կից, երկու բանջարանոց։ Այս պարտէզին և բանջարանոցներուն մէջտեղը կը գտնուէին վանքին ձիթահանը, գոմերը, ուղտանոցը, ձիանոցը, հաւնոցը, յարդանոցները, և մշակներու յատուկ սենեակները՝ որոնք Սիւցլիւք կը կոչուէին։

Կեսարիոյ Ս. Կարապետի վանքը եկեղեցական անօթներու, ըզգեստներու, վարագոյրներու, աշտանակներու, կանթեղներու ևլն. տեսակէտով շատ հարուստ վանք մը չէր։ Հաւանօրէն քանիցս կողոպտուած և քանիցս ալ պարտքին հատուցման համար կամ այլ պատճառներով իր գոյքերը կողոպտուած կամ ծախուած ըլլալուն համար։

Ս. Կարապետի եկեղեցական իրերու հոխ նուիրատուութիւններ ընողներուն մէջ, պէտք է յիշել Պէզճեան Յարութիւն Ամիրան և Տիւզեանները որոնք մեծ սէր ունեցած են վանքին վրայ։



ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՄԻՐԱՅ ՊԷԶՃԵԱՆ
(1771 - 1834)

Պէզճեանէ նուիրուած յիշատակներուն վրայ կը տեսնուի կնիք մը որուն վրայ գրուած է «յիշատակ է Յարութիւն Ամիրայ Պէզճեան, 1830»։

Տիւզեանք՝ այս վանքին համար մասնաւոր սէր մը ունեցած են վասնզի, ինչպէս ըսի արդէն, երեք Տիւզեաններ հոն աքսորուած էին, և Պէզճեան ամիրան յաջողած էր փրկել զանոնք հնարիմացութեամբ

Ս. ԿԱՐԱՊԵՏ ԱՔՍՈՐՈՒԱԾ ԵՐԵՔ ՏԻՒԶԵԱՆՆԵՐԸ



ԿԱՐԱՊԵՏ ՊԷՅ ՏԻՒԶԵԱՆ
(1779 - 1855)



ՅԱԿՈԲ ՉԵԼԵՊԻ ՏԻՒԶ
(1793 - 1847)



ՊՕՂՈՍ ՊԷՅ ՏԻՒԶԵԱՆ
(1797 - 1871)



մը, կայսեր մեծարելով կեսարական ընտիր ապուխտ։ Սուլթան Մահմուտ շատ գոհ կը մնայ։ Պէզճեան պատեհութիւնը կ'օգտագործէ, աքսորականներուն անունը կայսեր առջև արտասանելու համար և կ'ըսէ. «Կեսարիայէն Ձեր Տիւզեան ծառաները ղրկած են»։ Կայսրը անմիջապէս կ'ըսէ. «Ներեցի, թող գան»։ Պէզճեան նրբամտութեամբ կը պատասխանէ. «Գիտէի որ ապուխտով մուկ կը բռնուի, սակայն մարդուն ազատիլը չէի գիտեր»։

Այս պատկառելի անցեալով վանքը՝ որուն զինադադարէն յետոյ նորոգութիւնը և պահ մը որբանոցի վերածուիլը յիշատակեցի, 11 Յունիս 1928էն յետոյ գրաւուած է և այսօր կը գործածուի իբր հիւանդանոց և իբր ապաքինարան (Սանատօրիում)։

2. Ս. ԴԱՆԻԷԼԻ ՎԱՆՔ. — Գալակէսի գիւղին վարը գտնուած փոքրիկ գեղատեսիլ ձորակի մը եզերքը Ս. Կարապետի վանքէն 10 վայրկեան հեռու, հարթ տեղւոյ մը վրայ կառուցուած էր Ս. Դանիէլի



Ս. ԴԱՆԻԷԼԻ ՎԱՆՔ

պարսպապատ վանքը խիտ մրգաստաններու մէջ թաղուած ակնապարար համայնապատկերով մը։

Այս վանքին հիմնարկութեան թուականը անծանօթ է։ Ոմանք մինչև քրիստոնէութեան Ա. դար կը բարձրացնեն՝ վերագրելով զայն Թադէոս առաքեալին (Հայ Վանօրայք, 65) որ իբր թէ 38ին կու գայ Կեսարիա քարոզութեան և այս վանքին տեղը կը դնէ աւազան մը և կը մկրտէ շատերը։ Մինչև վերջը ցոյց կու տային աւազան մը որ կանգուն էր և առհասարակ Թադէոս Առաքեալի աւազան կը կոչ-

ւէր(1)։ Կեսարիոյ և շրջակայից Հայերը երբ Վարդավառին Ս. Կարապետ և Ս. Դանիէլ վանքերը ուխտի երթային իրենց անկնունք զաւակները այդ աւազանին մէջ մկրտել կուտային (Ծիվան Աշըգեան, Կեսարիոյ Ս. Դանիէլի վանքը, Դրիփանի Տարեցոյց, 1932, էջ 185–95)։

Աւանդօրէն կը պատմուէր նաև թէ Ս. Գր. Լուսաւորիչ իր ձեռնադրութենէն յետոյ, Սեբաստիոյ ճամբով Հայաստան դարձին կ'այցելէ այս աւազանին և կը հրամայէ անոր կից յանուն Տիրամօր Ս. Կուսին մատուռ մը շինել (Նոյն)։

Այս աւանդութիւնը կ'երեւայ թէ Յունաց մէջ ալ արձագանգ գտած է վասնզի իբր թէ Տաքսիյարխոն յունական վանքին մէջ պահւած Քր.ի 1295 թուականով յունարէն կանոնիգմոսի (=կանոնագիր) մը յիշատակարանին մէջ գրուած էր հետեւեալը(2). «Յովհաննու Կարապետի մենաստանէն հազիւ հինգ վայրկեան հեռու կը գտնուի Հայոց Ս. Աստուածածին մատուռով Դանիէլի մենաստանը, որ Դ. դարուն կառուցուած է Հայ իշխաններու կողմէ, Ս. Գրիգորի ձեռնադրութեան առթիւ շինուած, Հայոց սեփականացեալ վանք մըն է»:

Յունական ձեռագիրը՝ որուն վաւերականութիւնը կասկածելի կը գտնեմ, վասնզի 1295ին դեռ այս վանքին Ս. Դանիէլի անունով կոչւած ըլլալը հաւանական չէ — ինչպէս պիտի տեսնուի — արձագանգ կ'ըլլայ դարաւոր աւանդութեան մը, որ բոլորովին զուրկ չէ հիմէ վասնզի որոշ է թէ այս վանքը հին ատեն Ս. Աստուածածին անունը կրած է և ունեցած՝ այս անունով մատուռ մը որ մինչեւ վերջը կը մնար (Ծիվան Աշըգեան, Նոյն) վասնզի Վտարանդին (Մասիս, թ. 3848) կ'ըսէ թէ «կար աստ մատուռ մի յանուն Ս. Աստուածածնայ ուր ապա գալով Օշին ոմն իշխան ի Կիլիկիոյ կը մնայ անդ եւ ի յիշատակ որդւոյ իւրոյ Դանիէլի կը կոչէ եկեղեցին յանուն Ս. Դանիէլի Մարգարէին: Թէ ով էր այս Օշին՝ յայտնի չէ» (տես նաև Բնաշխարհիկ Բառարան)։ Ոմանք զայն կը ներկայացնեն Վասպուրականի Սենեքերիմ թագաւորին Դանիէլ անուն կրտսեր եղբօրը որդին։ Սենեքերիմ ինչպէս որ Սեբաստիոյ մէջ Ս. Նշանի վանքը շինած էր Կեսարիոյ մէջ ալ Ս. Աստուածածին վանքը կառուցած էր, ուր յետոյ առանձնացած էր իր կրտսեր եղբայրը Դանիէլ՝ հրաժարելով, ինչպէս իր Օշին որդւոյն, Գարմուկի (=Կէմէրէկ) իշխանութենէն, և չորս տարի յետոյ մեռած էր։ Օշին լսելով իր հօրը մահը, կու գայ Կեսարիա և մեծ շքով կը թաղէ զայն եկեղեցիին աջակողմեան դասին կողմը հիւսիսային(3) որմին կից(4)։ Օշին այս առթիւ

(1) V. Cuinet (Ա.318) «Նուազ վաւերական» այս աւազանին համար կ'ըսէ թէ մեծ քար մըն էր մէջը փորուած նման այնքան ուրիշներու որոնք կը գտնուին երկրին մէջ ձաւարի պատրաստութեան համար։ Աշխարհագիրը՝ անշուշտ սխալով մը հոս գլխատուած կը կարծէ Ս. Թադէոսը։

(2) Այս ձեռագիրը ըստ Պ. Ծիվան Աշըգեանի մինչեւ 1920 կը պահուէր Նէվշէհիրի Մետրապոլիտ Տ. Նիքոլայի քով, որ այժմ Սերէզ (Յունաստան) կը գտնուի։

(3) Վտարանդին, անշուշտ սխալմամբ «հարաւային կողմը պատին մէջ» կ'ըսէ (Մասիս, թ. 3848)։

(4) Ըստ Ալիշանի գերեզմանին վրայ շինուած էր աջակողմեան սեղանը։



ի յիշատակ հօրը, վանքը նորոգել կու տայ հիմնովին և կը ծաղկեցնէ մրգաստաններով և ծառաստաններով, կը շինէ ուխտաւորներուն խուցեր բարձրակառոյց ամարանոցներով և վանքը կը կոչէ յանուն Դանիէլի ճգնաւորին՝ Ս. Դանիէլի մենաստան։ Օշին նոյնպէս կ'ուխտէ 8 տարին անգամ մը այցելել վանքը և իր հօրը գերեզմանը։ Տարիներ յետոյ, Օշին իշխան կու գայ Ս. Դանիէլ և հոն հիւանդանալով կը մեռնի և կը թաղուի իր հօրը գերեզմանին կից (Ծիվան Աշըգեան)։

Այս պատմութենէն զատ ինծի անծանօթ յիշատակարանի մը համաձայն որ պր. Ծիվան Աշըգեան իբր թէ Աւետարանի մը լուսանցքին վրայ գտած է «վանքն հիմնեալ ի Ս. Թադէոս Առաքելոյն յանուն Ս. Կուսին Մարիամու Տիրամօր եւ ապա նորոգմամբ Օշնի արքայի Սեբաստիոյ կոչելով յանուն եղբօր իւրոյ ճգնաւորի Ս. Դանիէլ»:

Ինչպէս կը տեսնուի անգամ մը՝ Դանիէլ կ'ըլլայ եղբայր Սենեքերիմ Արծրունիի և Օշին անոր որդին, և անգամ մը Օշին՝ թագաւոր Սեբաստիոյ և Դանիէլ անոր որդին, որով կը տեսնուի խառնակութիւն մը, անշուշտ այն պատճառով որ բոլոր ասոնք ուշ ժամանակներու մէջ գիրի առնուած զրոյցներ էին, և պատմական հիմ չունէին, վասնզի ժամանակակից պատմիչներ երբեք չէին յիշեր այս անձերը, որոնք եթէ պատմական դէմքեր ըլլային, վանքին հիմնարկութիւնը ապահով ԺԱ. դարուն առաջին կիսուն կատարուած ըլլալը պիտի հաստատուէր։

Վտարանդին սակայն, ինչպէս տեսանք, աւելի հաւանական տեսութեամբ մը Օշինը կը համարէ Կիլիկեան իշխան մը, որ աւելի կը համաձայնի պատմական տուեալներուն, վասնզի Օշին անունը այդ շրջանին գործածական էր։ Vital Cuinet (էջ 318) այս Օշինը կը համարէ Կիլիկիոյ Թագաւոր (1308–1320) որ իր Դանիէլ որդւոյն հետ հոն թաղուած էր։ Իսկ Արիս Գալֆայեան (Չօմախլու, էջ 66) վանքին հիմնադիրը կը համարէ «ճգնաւոր Դանիէլ» որ «զաւակն էր Լամբրոնի Օշին իշխանին»: Գերեզմանին թուականն ալ կը պատշաճի այս շրջանին։ Այս գերեզմանին «տձեւ և անճոռնի» գիրերով արձանագրութեան կարդացուած մասն էր հետեւեալը, որ գիրերուն ձեւէն և պարզութենէն դատելով V. Cuinet (318) կը համարէ վաւերական.



ՕՇԻՆ ԻՇԽԱՆԻՆ ԳԵՐԵԶՄԱՆԱՔԱՐԸ

«Ի թվ. ՉՁԷ(1) ( 787+551 = 1338 ) փոխեցաւ Օշին... նա որ զաս կիրս

(1) «Հայ Վանօրայք»ի մէջ (էջ 67) ՉԾԷ տպուած է, մինչ պիտի ըլլայ ՉՁԷ. ինչպէս իր կենդանութեան ինծի հաղորդած էր Տրդատ եպ. Պալեան, (տես նաև Բիւզանդիոն, թ. 1376), Վտարանդի (տես Մասիս, թ. 3848) կը կարդայ ՉՁԵ. որ ճիշդ չէ հաւանօրէն։

(գիրս?) կարդա... հայր մեր որ երկին աս ... իր հոգուն...»(1)։

*Այս գերեզմանաքարին վրայ կցուած է ուրիշ տապանաքար մըն ալ, որուն վրայ եւս կար հետեւեալ արձանագրութիւնը.*

«Քրիստոս Աստուած ամենայն սրբոց բարեխաւսութեամբ ողորմեայ Բեկին հոգուն...» (2)։

*Այս տապանաքարը* 20 *սանթիմէթր հաստութիւն,* 1,30 *մէթր երկարութիւն,* 35 *սանթիմէթր լայնութիւն ունի և լուրթ գոյնով մարմարիոնէ շինուած է։*

*Այս հնագոյն արձանագրութիւնները եթէ արդարև կը պատկանին վանքին հիմնադիրներուն, գործածուած Բեկ տիտղոսէն և մանաւանդ թուականէն, որ իբր Օշինի մահուան թուական ցոյց կը տրուի այս վանքին շինութեան ժամանակը յետաձգել պէտք կ'ըլլայ մինչև ԺԴ. դարուն կէսերը։*

*Աւելի հին յիշատակարաններ գոյութիւն չունէին վանքին մէջ և չուրջը, որոնք քիչ շատ աւանդութիւնը արդարացնէին։ Միայն վանքին մօտ այրի մը մէջ Վտարանդին տեսած էր երկու գերեզմաններ որոնց տապանագիրերը եղծուած էին, սակայն մէկուն վրայ դեռ կը կարդացուէր* «Նահատակ Քրիստոսի» *բառերը* (Մասիս, 3848), *որոնք ոեւէ լուսաբանութիւն մը չեն տար։ Կրնան այս գերեզմանները նոյնիսկ ոեւէ կապ չունենալ վանքին հետ։*

*Հնագոյն գրաւոր յիշատակարանը որ Դանիէլ-Օշինի գերեզմանի վիմագրական արձանագրութենէն յետոյ կը յիշէ իր ծագումը առասպելներու մէջ պարուրուած այս վանքը, Սիմէոն դպիր Լեհացիի ուղեգրութիւնն էր։ Ան 1617–1618ին այցելած է այս վանքը* «Ս. Դանիէլ անուն, յոյժ գեղեցիկ եւ պատվական, վիմաշէն եւ կամարակապ» (*ՀԱ.* 1935, 92), *որ ինչպէս կը հասկցուի իր գրածէն այն ատեն ունէր* «եպիսկոպոս մի եւ երկու մալազ» (*Նոյն*)։ *Այս եպիսկոպոսը որուն յաջորդներէն մէկը* 1838*ին ինքզինքն կը կոչէր* «պաշտօնեայ Ս. Աստուածածնի եւ պետ առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի աստուածաբնակ խորանացն» (*տես* Ցուցակ Հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, *Ա. էջ* 31), *կ'երեւայ թէ պահած էր այդ դարուն տակաւին նաև իր* Ս. Աստուածածին վանք *կոչումը, և իր յատուկ առաջնորդութիւնը* (*Ոսկան եպ. Երեւանցիի յիշատակութիւն, տես վերը, էջ* 908)։

*Յետոյ, ինչպէս տեսնուեցաւ ԺԷ–ԺԸ. դարերուն անիկա կապուած է Կեսարիոյ և* 1798*ին դարձեալ առանձին Առաջնորդութեան մը կեդրոն եղած էր, ենթակայ Կիլիկիոյ Կաթողիկոսութեան (տես վերը, էջ* 912), *ինչպէս կը հաստատուի մասնաւորապէս Կիլիկիոյ Միքայէլ Կաթողիկոսի* (1737–1757) 1749*ի մէկ կոնդակէն Դաւիթ անուն վարդապետի մը յանձնել և ուղղել առ* «եկեղեցասէր բարեպաշտ հայկազունս», *ուր վանքին հնութեան և վաւերականութեան վրայ շատ մը ներբողներ հիւսելէ յետոյ, կը յորդորէ նպաստամատոյց ըլլալ վանքին շինութեան և նորոգութեան* (Մասիս, *թ.* 3848) *և Կիրակոս Ա.ի* (1791–1822) 1791*ի կոնդակէն*(1) *և ձեռագիր երկու յորդորական և օրհնութեան գիրերէն։*

*Այդ դարուն այս վանքը կը յիշատակուի նաև* «խորան ծերի սրբոյն Դանիէլի» *ձևով, չեմ գիտեր ինչպէս Ս. Կարապետի վանքը փոխադրուած վարագոյրի մը յիշատակարանին համաձայն որ է* «յիշատակ է գեղեցկաշէն վարագոյրս, ոմանց միաբանասէր օրհնեալ քրիստոնեայ եղբարց, վասն սրբոյ խորանին ծերի սրբոյն Դանիէլի, որ ի քաղաքն Կեսարիայ եւ ի գիւղն Հէվգերէցի, սակս հոգւոց իւրեանց, եւ ամենից ննջեցելոց, կատարեցաւ աշխատասիրութեամբ Քէրէստէճի մհտի Կարապետի որդւոյ սիրացու Մարգարին ի թվին ՌՄԺԴ. (= 1765) Ապրիլ Ա.ին»։

30 *տարի յետոյ այս վանքին նուիրուած կը տեսնենք մեծ խաչ մը սա արձանագրութեամբ.*

«Յիշատակ է խաչս կեսարացի Տէր Յարութեան որդի Պետրոս վարդապետին, ի Դուռն սրբոյ Դանիէլի վանքին ով ոք գողասցի եւ կամ վաճառեսցի ի հոգւոյն սրբոյ նզովեալ եղիցի, թվին ՌՄԽԴ.ին» (=1795)։

*Վանքին եկեղեցին Ս. Աստուածածին կը կոչուի, և շինուած է* 1842*ին, նախապէս գոյութիւն ունեցող եկեղեցիի մը տեղը, ինչպէս կ'երեւայ հետեւեալ յիշատակարանէն որ զետեղուած էր եկեղեցւոյն արեւմտեան դրան վրայ, շէնքի ճակատը։*

Տեսչութիւն երկնային ի բարձանց(2) իջեալ ի յայց
Ջտէրութեան տաճարս այս վերստին նորոգեաց.
Յանուն Ս. Դանիէլ քաջազարմ սերնդի,
Քաջազուն(3) Օշին վեհ մեծանուն իշխանի,
Օգնութեամբ եւ տրօք(4) Հայկազնեան գրոհի,
Եւ(5) ջանիւք առաջնորդ Իսահակ զգօն դետի
Որ յաջորդ Կարապետ Որբազան(6) վեհի
Ի զարմէ Դաւթեան(7) եւ(8) երկրաւ(9) Կէրմիրցի(10)։
յԱմի ՌՄՂԱ. Նոյեմբեր 14.(11)

*Այս եկեղեցին երեքտաճարեան հնաւանդ ձեւով, չորս սիւներու վրայ կառուցուած, փոքրիկ կաթողիկէ մը ունի։ Ներքին պատերը*

---

(1) *Վտարանդի ունի տարբեր ընթերցում որ հարկ կը դատեմ մէջ բերել. ահա անիկա* «**ի մեծ Թ.Վ. Ջ.Ջ.Ն.** Փոխեցաւ Ոշնին Ա. որ զայս կիրս կարդա հայր մեր որ երկին սաս հոգւոյն»։ *Ճիվան Աշըգեան համաձայն է այս ընթերցման, միայն թուականը կը կարդայ ՉԵ.* (=636) *ինչ որ բնաւ հաւանական չէ։*

(2) *Վտարանդիին ընթերցումը կը տարբերի փոքր ինչ.* «**Քրիստոս Աստուած** ամենայն սրբոց բարեխաւսութեամբ ողորմեա բեկի հոգուն»։ *Ճիվան Աշըգեան Տրդատ եպ. Պալեանի հետ համաձայն է այս տողերուն մէջ։*

(1) *Թէ՛ Միքայէլ և թէ՛ Կիրակոս կաթ.ներու կոնդակները* 1919*ին պահուած էին Կէրմիրի գրադարանը ըստ Գ. Ճիվան Աշըգեանի։*

(2) Բարձունց *կը կարդայ Վտարանդին* (*Մասիս, թ.* 3848)։

(3) *Ճիվան Աշըգեան «քաջանուն» կը կարդայ։*

(4) «Օգնութեամբ տիօք» *կը կարդայ Վտարանդին։*

(5) *Կը պակսի ըստ Վտարանդիի (Նոյն)։*

(6) «Որբազան Կարապետ» *կը դնէ (Նոյն)։*

(7) Դաւիթեան, (8) *կը պակսի,* (9) երկրորդ *կը կարդայ։*

(10) Կարմիրցի *կը կարդայ։*

(11) *Վտարանդի ունի «յամի* 1839 *ՌՄՂԱ. Նոյեմ.* 14»*. ՌՄՂԱ* = 1742 *ըլլալով* 1839 *սխալ պիտի ըլլայ։ Ես Տրդատ եպ. Պալեանի ընդօրինակութեան նախապատուութիւն կու տամ։*

գետնէն սկսեալ գրեթէ երկու մեթր բարձրութեամբ Կուտինայի յախճապակիներով զարդարուած էր։

Եկեղեցիին մկրտութեան աւազանին դրան վրայ կար հետեւեալ արձանագրութիւնը, որ եկեղեցիին վերջին շինութեան ժամանակը կը յատկանշէր։

«Բարձրելոյն անճառ շնորհ հեղեալ յերկնից, նորոգեաց զայս կնքասուն սրբոց վանից: Արդեամբք եւ ծախիւք մեծահաւատ Ամիրայի, Պենսուբեցի Պօղոս աղա Արքունի Դպրի, Ջանիւք ճգամբ Տեառն Խաճակայ սրբոյ ուխտի: Գերաարքուն պետի վսեմ Առաջնորդի, յամի հազար ութն հարիւր թուականի, եւ յաւելմամբ քառասուն միոյ ի նի» (=1841):

Վանքին մաս կը կազմէին նաև միաբաններու և ուխտաւորներու յատուկ 30-35 սենեակներ, բաւական կոկիկ հիւրանոց մը, մառան, խոհանոց և այլն, որոնք պատերազմէն առաջ կը ներկայացնէին նորոգութեան կարօտ վիճակ մը։ Երուսաղէմի արդի Պատրիարք Ամեն. Տ. Թորգոմ Արքեպ. որ 1913ին Սեբաստիայէն դարձին այցելած է այս վանքը, կ'ըսէ թէ «հինցած՝ փլչելու նախօրեակին հասած շէնքի մը տպաւորութիւնը կու տայ ամբողջ վանքը՝ այցելուին, իր եկեղեցիովը, առաջնորդարանովը եւ ուխտաւորաց յարկաբաժիններովը» (Բիւզանդիոն, թ. 5313)։

Վանքը ունէր իբր սեփականութիւն երկու ծառաստաններ և վեց կտոր մշակելի արտօրայք 50 արտավար տարածութեամբ, որոնք վանքին առջեւն էին։ Արտ մըն ալ ունէր նոյնպէս 50 արտավար տարածութեամբ, մէկ ժամ հեռու Մանճըսըն գիւղին դաշտին մէջ, որ բաւական արգիւնաբեր հող մըն էր։ Ունէր արտ մըն ալ Պէլէկէսի գիւղին մօտ։ Վանքին դրամական հասոյթը, տարեկան հազիւ 40-50 լիրայի կը հասնէր և կը գոյանար ուխտաւորներու և օգափոխութեան համար վանք եկող անձերու նուիրատուութեամբ։

1891ին վանքը կ'ենթարկուի մեծ պարտքի։ Կէրմիրցի, Մունճուսունցի և Պալակէսեցի հաճի աղաներ(1) կ'որոշեն վանքին գոյքերը ամբողջովին ծախել և վճարել կառավարութեան տուրքը, երկրագործական և շինութեան ծախքերը։ Բայց չարժուն գոյքերը և անասունները անբաւական գալով եկեղեցական սրբանօթները ծախել կը փորձեն։ Սակայն վանականները կ'ընդդիմանան և կ'որոշեն Պէզճեան Յարութիւն ամիրայի և Տիւզեաններու յիշատակներէն 3 հատ ծանրագին ոսկեհուռ շուրջառներ, վակասներ, ադամանդակուռ և մարգարտազարդ չաթալ թագ մը, 250 հնչուն ոսկիի փոխարէն աւանդի ձեւին տակ վանքին երեք թեմերէն մէկուն ձգելու կարգադրութիւն մը ընել, պայմանով որ երբ պարագաները ներեն և վանքը կարենայ տալ այդ գումարը այդ առարկաները նորէն վանք դարձըւին։ Մունճուսունցիք և Պալակէսեցիք ի վիճակի չըլլալով Կէրմիրցիք կը վճարեն այդ գումարը և այդ գոյքերը կը տանին Կէրմիրի Ս. Ստեփանոս եկեղեցին։

Այդ եպիսկոպոսական թագին և վակասին զմրուխտները Բարիզ, ոսկերիչ Էգնայեանները 600-1000 հնչուն ոսկի գնահատած էին, բայց Կէրմիրցիք չէին ծախած, որպէսզի 1915ին թրքական բարբարոսութիւնը զանոնք իբր անտէր գոյք բռնագրաւէր և Կ. Պոլիս ղրկէր։

(1) Վանքին հաշուառուներն էր իր և իրեն կապուած գիւղերէն ընտրուած յանձնախումբ մը (Արիս Գալֆայեան, Չօմախլու, 66)։



Տնտեսական այն քայքայումը որ Ստեփանոս եպ. Սանտալճեանի մատակարարութիւնը պատճառած էր վանքին 1891էն յետոյ, երբեք չբարուոքեցաւ։

Պատերազմէն առաջ գրեթէ անշքացած վիճակ մը ունէր, վասնզի 1904ի վարչական կարգադրութեամբ ենթարկուած էր Կեսարիոյ Առաջնորդութեան և դադրած էր առանձին աթոռ ըլլալէ և իրեն վիճակները կցուած էին Կեսարիոյ, գործնականապէս 1910էն յետոյ։ Պատերազմին ատեն չունէր միաբանութիւն, այլ միայն հոն կը մնային փոխանորդ վարդապետ մը՝ Գէորգ վրդ. Պօյաճեան(1) և քանի մը սպասաւորներ և մշակներ։

«Իր բաղդին լքուած հնացածութեան մը սրտաբեկիչ երեւոյթը կը պարզէ ան: Արդարեւ իր ճամբաները ու փողոցները անկանոն ու անյարդար են. Երեւուն հինգի մօտ ուխտաւորներուն յատուկ խուցերը մեծ մասամբ խախխուած, տեղ տեղ փլփլուած, դարձած են հնամաշ մամուկի գործարաններ, եւ երբեմն կարիճներու ճեմավայրեր. իսկ վանականներու խուցերը կը մնան այնպէս ինչպէս շինուած են դարեր առաջ, մթութեան ու խոնաւութեան բոյներ են առանց այ: Փոքրիկ եկեղեցի մը ունի, չորս սիւներու վրայ կանգնուած եւ խոյրաձեւ գմբէթով մը. վանքին մէջ անաղարտ մնացած միակ շինութիւնն է. պիտի ըսէի թէ հսկայ մըն է ան որ զինք շրջապատող կիսաւեր խուցերուն մարմինները շալկած կը տանի ժամանակին ընթացքին ի վար՝ վերջնական անկումէ զերծ պահելու համար զանոնք: ... Նշանաւոր դարձած իր միակ բանն է ջուրը որ կը հայթայթուի ջրհորէ մը՝ նախնական դրութեամբ, այսինքն դոյլով» (Եղիազարեանի ձեռագիր)։

Իսկ հիմա Ս. Դանիէլի պատմական վանքէն ոչինչ կը մնայ, հիմնայատակ քանդուած ըլլալով. Օրհնեալ ձեռք մը, հայրենի յիշատակներու խնամոտ հոգածութեամբ, վանքին գլխաւոր պատմական յիշատակարանը, Օշինի գերեզմանաքարը, կրցած էր փոխադրել Ս. Կարապետի վանքը, որ սակայն իր կարգին գրաւուելով այսօր ոչինչ կը մնայ մեզի աւանդութիւններով օծուն այս վանքէն իբր յիշատակ։

3. Ս. ՍԱՐԳՍԻ ՎԱՆՔ ԿԱՄ ՏԷՐԷ ՎԱՆՔ. — Տէրէվանք գիւղէն մէկ քառորդ ժամ դէպի հարաւ-արեւմուտք, հանդիպակաց լերան կողին վրայ կառուցուած է Ս. Սարգիսի վիմափոր վանքը։ Ս. Սարգիս, ինչպէս յայտնի է կեսարական սուրբ մըն է, և հետեւաբար շատ պատուըւած Կեսարիոյ շրջանին մէջ։ Նոյնպէս անիկա մեծ տեղ գրաւած է հայկական աւանդութեանց մէջ, վասնզի Կոստանդիանոսի այս Կեսարացի քրիստոնեայ զօրավարը Յուլիանոսի չծառայելու համար Հայոց Տիրան և ապա Պարսից Շապուհ թագաւորներուն ծառայած է և նահատակուած 362ին։ Կ'աւանդուի թէ իր մարմինը Ս. Մեսրոպ փոխադրած է Կարբի և հոն շինած է վանք մը։ Իր որդին՝ Մարտիրոս եւս

(1) Ստեփաննոս եպ. Սանտալճեանի մահէն յետոյ 1911ին այս վարդապետը փոխ-վանահայր կարգուած էր։ Աշխարհական անունով Եղիա ծնած է 18 Սեպ. 1853ին Թոմարզա ուր առած էր իր ուսումը։ 6 Հոկտ. 1885ի Թոմարզայի վանքին իբր միաբան կը ձեռնադրուի վարդապետ Եղիա եպ. Դերձակեանէ։ Պաշտօնավարած է Կեսարիա, Գըրշէհիր, Նիյտէ, Գոնիա և հուսկ ուրեմն փոխադրուած է Ս. Դանիէլ։ Տարագրութեան մէջ անհետացած։

անբաժան յիշատակուած է վանքի Քրիստոնէութեան համար նախատակուած է հօրմէն առաջ։

Կեսարիոյ Հայք ալ Ս. Սարգիսի անունով կառուցած են եկեղեցիներ և վանքեր, որոնցմէ մէկն էր այս Տէրէ վանքը, որուն տեսարանը ակնապարար, դիրքը վայելուչ, օդաւէտ և ջուրն ալ բարեհամ էր։

Վանքին հիմնարկութեան բուն թուականը անծանօթ կը մնայ մեզի, բայց ըստ աւանդութեան և ըստ հայերէն գրչագիր մատեան-



ՏԷՐԷ ՎԱՆՔ ԿԱՄ Ս. ՍԱՐԳԻՍԻ ՎԱՆՔ

ներու յիշատակարաններուն, Կեսարիոյ շատ հին վանքերէն մին է (Տրդատ եպ. Պալեան, Հայ Վանօրայք, 82)։ Մինչև անգամ զայն Դեւոնդիոս Հայրապետի ժամանակները և աւելի կանուխ կառուցուած համարողներ կան (Նոյն)։

Տարբեր աւանդութիւն մը զայն քիչ մը աւելի ուշ Կեսարիոյ աթոռին պարծանքը և փառքը հանդիսացող Ս. Բարսեղ Հայրապետին ժամանակները հիմնուած ցոյց կու տայ, նոյնիսկ մեծ հայրապետին ձեռամբ։ Երբ Զար Յուլիանոս սպառնալով Կեսարիայի թէ զայն քարուքանդ պիտի ընէր եթէ յաղթական դառնար պատերազմէն, անցաւ գնաց Պարսից դէմ, Ս. Բարսեղ մեկուսացաւ Երկւորակ լերան վրայ, —որ յետոյ կոչուեցաւ Բարսեղ Հայրապետի լեռ (Ալի տաղը)— Աստուծմէ խնդրելու համար Կեսարիոյ փրկութիւնը։

Երբ հասաւ Յուլիանոսին պատերազմին մէջ մեռած ըլլալուն լուրը, Ս. Հայրապետը իջաւ իր ճգնարանէն, գոհաբանական աղօթքներով փառաբանելու համար Աստուած, և պանծացուց քաջամարտիկ Ս. Սարգիս զօրավարին մարտիրոսութիւնը իբրև պատիւը Կեսարիոյ և յանուն նոյն սուրբին կանգնեց վիմափոր մատուռ մը որ մեր Սուրբ



Սարգիս վանքին տեղւոյն վրայ էր (Ծիվան Աշըգեան, Գրպանի Տարեցոյց Գափամաճեան, 1933, էջ 167-168)։

Կեսարիոյ Յոյներուն մէջ իսկ այս աւանդութիւնը կ'ապրէր և անոնք ալ կը հաստատէին թէ Ս. Բարսեղի եկեղեցին եղած է այդ տեղը (Նոյն)։

Արդէն տեսանք թէ Տէրէ վանքին չուրջ բոլորը լեցուն էին բազմաթիւ քարանձաւներ որ ըստ Ch. Texierի ծառայած էին Քրիստոնէութեան Ա. դարերուն իբր աղօթարաններ և ճգնարաններ։ Սակայն Ս. Սարգիսի վանքն անոնց շարունակութիւնն էր թէ չէր, խնդիր մըն է որ լուծել դիւրին չէ։

Իրեն վերագրուած պատկառելի հնութիւնը արդարացնել կը թուի վանքին տաճարին կառուցուածքը որ միակտոր վիմափոր է, ինչպէս նաև իր առջև, դէպի հարաւ երկարած 10 կանգուն լայնութեամբ և աւելի քան 100 կանգուն երկարութեամբ մութ գաւիթը և հինգ սենեակները 4 մէթր լայնութեամբ և 7 ուկէս մէթր երկարութեամբ—ամէնքն ալ վիմափոր— որոնք ի հարկէ ժամանակին շատ ծանր և տաժանելի ու համբերատար աշխատութեամբ փորուած են։

Սակայն հակառակ անոր որ բոլոր շրջակայքի քարանձաւները հնօրեայ հանգամանք ունէին, Ս. Սարգիս վանքին տաճարը, նոր ժամանակի գործ կը համարուի։ V. Cuinet (էջ 318) կ'ըսէ թէ «այս քարանձաւներէն մէկը, որուն խիստ ճիշդ նկարագրութիւնը կու տայ Ch. Texier. փորուած է ժայռի մէջ, մեկուկէս դար առաջ, ծառայելու համար իբր եկեղեցի Տէրէվանքի: Դեռ այսօր կը կատարէ այդ դերը: Ունի 28 մեթր երկարութիւն երկու պահարաններու հետ: Իր կամարը կիսաբոլոր մըն է, առանց ոեւէ զարդարանքի»:

Այս տեսութեան ուժ կու տայ աւանդութիւն մը որուն համաձայն եկեղեցին փորած էր Հայ աբեղայ մը միակտուր քարի մը կամ ժայռի մը մէջ (Վտարանդին, Մասիս, 3848)։

Փորողները սեղանը դէպի արեւելք բերելու համար լերան մէջ մուտ գործած են նախապէս և ապա դարձած դէպի Արեւելք, այնպէս որ տաճարը գաւիթին հետ ուղղանկիւն մը կը ձեւացնէր և լոյսը կ'ընդունէր խորանին ետեւէն (Գր. Նշանեան)։

Եկեղեցին և կողմնակի երկու պահարանները բաւական լուսաւոր են, արեւելեան կողմը բացուած երեք փոքրիկ պատուհաններէն ստանալով լոյսը։ Բացի այս երեք պատուհաններէն ուրիշ ոեւէ լուսամուտ գոյութիւն չունէր։ Եկեղեցիին գաւիթին արտաքին դրանքով, կար նաև առանձին փոքրիկ մատուռ մը, Ս. Գէորգի անունին նուիրուած, որ 1810ին կառուցուած կը կարծուի Կեսարացի Գէորգ վրդ.ի ջանքով (Ծիվան Աշըգեան, Նոյն էջ 171)։

Իսկ դէպի աւելի առաջ կառուցուած էր փոքրիկ զանգակատուն մը, որ նոր ժամանակներու շինութիւն մըն էր, ինչպէս կը հասկցուէր հետեւեալ յիշատակարանէն։

«Կանգնեցաւ զանգակատունս այս, Թալասցի ազնիւ Տիկին Մարիամ Կ. Միլօեեան, Տէր Աստուած լուսաւորէ զհոգիս համայն ննջեցելոց, 1887, Մարտ 1»:

Դժբախտաբար վանքին այս հետաքրքրական եկեղեցին, ինչպէս նաև անոր յարակից՝ նոյնպէս վիմափոր սենեակները, որոնցմէ վանահօր սենեակը ներքնուղիով մը միացած էր ձախակողմեան պահարանին, ոեւէ արձանագրութեան մը հետքն իսկ չեն կրեր գաղափար

մը կազմելու համար այդ քրիստոնէական հաւատքի և համբերութեան մեծ ձեռակերտը եղող շինութեան ժամանակամիջոցին վրայ։ Սակայն ամէն պարագայի իբր Հայ վանք հիմնարկութիւնը Ս. Սարգիսի շատ հին ըլլալ չի թուիր։ Ապահովաբար ԺԷ. դարուն սկիզբը անիկա գոյութիւն չունէր, վասնզի Սիմէոն Լեհացի զայն չի յիշեր 1617–18 թուականներուն։

Եթէ Ch. Texierի կարծիքը ճիշդ է ան պէտք է կառուցուած ըլլայ ԺԷ. դարուն կէսերը, իրողութիւն որ կը հաստատուի նաեւ վանքին յիշատակարաններով և տապանաքարերով որոնք 1722 թուականէն աւելի հին չեն։



ՋԱՆԳԱԿԱՏՈՒՆ ՏԷՐԷ ՎԱՆՔԻ

Գրչագրաց յիշատակարաններու մէջ ալ չէ յիշուած։ Միայն գիտենք թէ վանքն 1701ին նորոգուած է Մահտէսի Խաչատուր աղայի նուիրատուութեամբ ինչպէս արձանագրուած է անթուական Ճաշոց գիրքի մը յիշատակարանին մէջ (Տրդատ եպ. Պալեան, Ցուցակ Հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, էջ 23–24)։

1729ին գրուած ձեռագիրի մը մէջ շատ բացորոշ կերպով կը յիշատակուի այս վանքը։

«Գրեցաւ» կ'ըսէ «գիրս ի Մաժակ քաղաքի գիւղն Հոռի(1) վանք ի վանքն սրբոց զօրաւորացն սրբոյն Գէորգայ եւ սրբոյն Սրգսի զինաւորին»:

Ինչպէս կը տեսնուի Ս. Գէորգ և Ս. Սարգիս միասին կը յիշուին հոս, ինչ որ ցոյց կու տայ թէ Ս. Սարգիս եկեղեցիէն զատ վաղուց հոն գոյութիւն ունէր Ս. Գէորգի անունին նուիրուած եկեղեցի մը որուն տեղ կառուցուած պիտի ըլլայ 1810ին՝ Ս. Գէորգի մատուռը։

ԺԸ. դարուն առաջին քառորդէն յետոյ յիշատակարաններու յաճախ կը հանդիպինք թէ գրչագրական և թէ վիմագրական։

Վանքը միաբան վարդապետներու և ուխտաւորներու յատուկ և բաւական կոկիկ ու օդաւէտ 15 քարաշէն և 5 հատ վիմափոր սենեակներ և տեսչարան մը ունէր։

Եկեղեցական անօթներու և զգեստներու տեսակէտով շատ աղքատ էր վանքը։ Ունէր միայն եպիսկոպոսական ծանրագին զգեստ մը և Թադէոս Առաքեալի մասունքով խաչ մը, ինչպէս նաեւ մատաղի

(1) Կը կարծեմ ընթերցման սխալ և պէտք է ըլլայ «Զորի»:



համար 300էն աւելի պղնձէ ամաններ՝ կապարիչով և հսկայ կաթսաներ (Դր. Նշանեան)։ Ունէր ընդամէնը 12 հատ հայերէն ձեռագիրներ, որոնք կը պահուէին խնամով։

Վանքին սեփականութիւնն էր Վարի գիւղին մէջ երկու պարտէզներ, և 20 արտավարի չափ վեց կտոր մշակելի արտօրայք և նաև սատանդ անպտղաբեր ծառեր որոնցմէ կը հայթայթուէր վանքին վառելափայտը:

Տարեկան հասոյթը կը բաղկանար ուխտաւորներու նուիրատուութիւնէն, արտերու և պարտէզներու աննշան վարձքերէն, որոնց ամբողջ գումարը հազիւ 30–35 ոսկիի կը հասնէր։

Այս հասոյթը իր ծախքին բաւարար էր։ Վանքին պայծառութեան նպաստած է մանաւանդ ուխտաւորութիւնը որ ճոխ էր շնորհիւ Ս. Սարգիսի հմայքին և իբր «երագահաս ձիաւոր և ուխտակատար և մուրատատուր» իր վայլած համբաւին որ կ'առինքնէր մանաւանդ երիտասարդները։

Ս. Սարգիսի վանքը Կեսարիոյ քաղաքէն հազիւ մէկուկէս ժամ հեռու ըլլալով առանձին առաջնորդութիւն մը կազմելու յարմարութիւնը չէր ներկայացներ, և ապահովաբար ալ չունէր իրեն սեփական եպիսկոպոսներ և ենթակայ վիճակներ։

Տրդատ եպ. Պալեան կը կարծէ թէ վանքը ունեցած է որոշ շրջան մը իր մասնաւոր վանահայրերը, ինչ որ բոլորովին անհաւանական չէ։ Իսկ Յիւլան Աշըգեան (1933ի Գրպանի Տարեցոյց, էջ 170) կը հաւաստէ թէ մինչև 1810, առանձին վանահայրութեամբ կը կառավարուէր, և անկէ յետոյ անցած է Ս. Կարապետի Առաջնորդ վանահօր տեսչութեան տակ։

Յիշատակուած վանահայրերուն անդրանիկն է՝

**Սարգիս եպ. Թալասցի** (1660) որուն միայն անունը կը յիշատակէ Տրդատ եպ. Պալեան (Հայ Վանօրայք, էջ 85) առանց ոեւէ տեղեկութեան։ Յիւլան Աշըգեան վանքին առաջին շինարար և կազմակերպիչ վանահայրը եղած է կ'ըսէ։ Սարգիս եպ.ի համար կը պատմեն թէ հուժկու և յաղթանդամ էր, և վանքին վիմափոր սենեակներէն մին ինքն փորակերտած էր (տես Յակոբ Նալեանի Գանձարան Ծանուցմանց)։

Օր մը Թալասէն տիկ մը գինի առած երբ կը դառնար վանք, Թուրքերը կը կռահեն և կ'ուզեն բռնի գրաւել։ Իսկոյն եպիսկոպոսը կ'իջնէ ձիէն, կը խմէ գինին, պարապ ամանը նետելով անոնց առջև կը յառաջանայ դէպի վանք (Գրպանի Տարեցոյց, 1933, 170–171)։

**Մարկոս եպ.** (1664-1669), Կեսարիոյ նախկին Առաջնորդ որ ըստ Տրդատ եպ. Պալեանի (Հայ Վանօրայք, 41) 1664ին Կեսարիոյ Առաջնորդութիւնը թողլով կը քաշուի Ս. Սարգիս վանքը, ուր կը մնայ մինչև 1668 իբր վանահայր։ Յետոյ կրկին կը դառնայ Ս. Կարապետի վանքը և կը շարունակէ Կեսարիոյ Արքեպիսկոպոսութիւնը մինչև 1682։ Սակայն կը կարծեմ թէ Տրդատ եպ. Պալեան շփոթութեան մը զոհ եղած է, վասնզի «Սբ. ուխտ»ը որուն Առաջնորդ էր ինքն, հաւանօրէն քաղաքի Ս. Սարգիս եկեղեցին է։

**Յովհաննէս վրդ. Թալասցի** (...1698–1722†)։ Անթուական Ճաշոց Գիրքի մէջ գրուած է. «Ես Թալասցի Տէր Յովհաննէս եկի ի Սարգսի վանքն ի Սբ. յեղմէ.՝ որ էր թուական Հայոց ՌՃԽԷ (= 1698) եւ երբ ՌՃԾ (= 1701)

թիւն լցաւ, ես Հաճի Աղան՝ պատճառ եղեւ շինութեան Սբ. Սարգիս եկեղեցիս՝ **վերատեսչութեամբ իմով անարժանութեանս»:**

Ուրեմն Յովհաննէս վրդ. Թալասցի որ 1698ին Երուսաղէմէն եկած էր, վանահայրն էր վանուց, իր օրով 1701ին, Հաճի Աղան, կամ իսկական անունով Մահտեսի Խաչատուրը, կը շինէ Ս. Սարգիս եկեղեցին։ Յովհաննէս վրդ. անոր 1708 Հոկտ. 26ին քաղաքէն վանք եկած ատեն վիրաւորուիլը և 3 օր յետոյ մեռնիլը նկարագրելով կ'ըսէ թէ «ասացէք իւր հոգւոյն Ած. ողորմի, քանզի բազում երախտիք եւ աշխատանք ունի ի վերայ այս վանիցս»: Քիչ վերը կրկին կը խնդրէ նոյնը «Հաճի **Կարապետի որդի Մահտեսի Խաչատուր Չէլէպուն** հոգւոյն լի բերանով՝ վասնզի բազում աղեկութիւն ունի ի վերայ մեր վանացս»:

Յովհաննէս վրդ. Թալասցի ուրեմն վանքին երախտաւոր վանահայրերէն մէկն է։ Իր անունը յիշուած կը տեսնենք նաև 1705ին «Սբ. Սարգսայ զօրավարի Անապատն» Թոմարզացի Ղազար քհ.ի ձեռամբ գրուած Աւետարանին մէջ որուն գրիչը կը խնդրէ յիշել «ի յաղօթս... սուրբ **ուխտիս պատուաւոր** զկուսակրօն **Յովհաննէս արեղայն** եւ զԹամամ տնտեսն որ բազ(ու)մ երախտիք ունին ի վեր(այ) մեր կերակրելով եւ ըմպելով կամ մխիթարելով պատուաւորեցին ի վարձս նոցա աստ եւ ի հանդերձելումն եւ զտնտեսի այրոյն Անանիային եւ դուստր Նազլուին»:

Հոս հետաքրքրաշարժ իրողութիւն մը երեւան կու գայ։ «Ուխտիս պատուաւոր» Յովհաննէս վրդ.ի պաշտօնավարութեան շրջանին վանքին մատակարարն էր կին մը՝ Թամամ որուն երկան՝ Անանիային և աղջըկան Նազլուին համար աղօթք կը խնդրէ ձեռագրին գրիչը Ղազար քհ. Թոմարզացի, վանքի վանահայր և մատակարար «բազում երախտիք ունին» իր վրայ, քանի որ կերցուցած խմցուցած են և սփոփած զինքը։

Յովհաննէս վրդ.ի անունին կը հանդիպինք նաև 1720ին ուրիշ ձեռագիրի մը մէջ։ «Ի վայելումն սրբոյն Սարգիսի Տէր Յովհաննէս վարդապետին» «ի գիւղն Նիւսիա ՌՃԿԸ (=1720) Յունիսի Լ. օրն Եշ.ի ձեռամբ անարհեստ Սարգիս գրչի» գրուած է Ռէմզիրք մը։ Այս սրբոյն Սարգիսի Տէր Յովհաննէս վրդ.ը (որուն գոյութիւնը Պալեան եպ. և Աչըգեան հաւաստապէս կ'անգիտանան) ուրիշ մէկը չէր կրնար ըլլալ եթէ ոչ Թալասցի այն վարդապետը որ 1698էն ի վեր կը պաշտօնավարէր այնքան արդիւնաւորապէս։ Վերջապէս անիկա կը մեռնի 1722ին բեղուն պաշտօնավարութենէ մը յետոյ և կը թաղուի վանքին մէջ։ Իր տապանաքարը կը մնար հոն, ինչպէս տեսած է Տրդատ եպ. Պալեան, առանց անդրադառնալու թէ ո՞վ է ան։ Անոր վրայ գրուած էր։

Այս է տապան հանգստեան Տէր Յովհաննէսին, թվին ՌՃՀԱ» (=1722) (Հայ Վանօրայք, էջ 85)։

Միեւնոյն տապանին տակ պէտք է թաղուած ըլլայ ուրիշ վանահայր մը — Գէորգ Կեսարացի— որուն տապանաքարի գրութիւնը կ'երեւայ նոյն քարին վրայ գրուած, Պալեան եպ. առաջինին կցած է և այսպէս խառնակած է։

**Եսայի եպ. Տէրէվանքցի** (...—1724-1735—...) Հաւանօրէն Յովհաննէս վրդ.ի անմիջական յաջորդն է այս եկեղեցականը որ եպիսկոպոսական աստիճանով ալ պատուուած է։ Իր նախորդին օրով սկըսած մտաւորական շարժման և գրչագրական աշխատութեանց մեծ զարկ տուած է, մասնաւորապէս Աստանացի Յարութիւն դպիրի ձե-



ռամբ բազմաթիւ ձեռագիրներ ընդօրինակել տալով, որոնք այսօր անշուշտ մասամբ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին մէջ կեդրոնացած են, վասնզի 1740ին Եսայի վրդ. Երուսաղէմ գացած է և իր ձեռագիրներուն մէկ կարեւոր մասը նուիրած է Ս. Յակոբեանց վանքին։ Եսայի եպ. Տէրէվանքցի կամ Կեսարացի ըստ Տրդատ եպ. Պալեանի կը յիշատակուի իբր Կեսարիոյ Առաջնորդ 1724 և 1725 թուականով երկու ձեռագիրներու մէջ Կեսարիոյ Յակոբ եպ.ին հետ (1721-1725), սակայն ինծի համար կասկածելի է այս տեսութիւնը ինչպէս իր տեղը բացատրած եմ և շատ հաւանական է որ Եսայի եպ. այդ թուականներուն իսկ ստանձնած ըլլայ Ս. Սարգիսի վանահայրութիւնը, որուն մէջ ըլլալը 1730ին շատ բացորոշ է վանքի յիշատակարանի մը մէջ կը կարդանք «եղեւ գրաւ սորա ի թվին Հայոց ՌՃՀԹ (1730) Սեպտեմբեր ԺԲ. ի մայրաքաղաքն Կեսարիա ի **վանքն սրբոյն Սարգսի, եւ յառաջնորդութեան սորա Տեառն Եսայի վարդապետի ճարտասանի եւ նորին յաշակերտի մեղսամէտ գրչի Արութիւնի եւ մականուամբ Աստանացի...»** (Հայ Վանօրայք, էջ 45)։

Իր խնդրանքով և ձեռամբ Յարութիւն Աստանացիի գրուած բազմաթիւ ձեռագիրներէն իր մասին քաղուած տեղեկութեանց համաձայն Եսայի եպ. Տէրէվանքցիի ծնողքն են Տր. Աբրահամ և Սուլթան կամ Սուլթանպէկ։ Ինքն կը սերէր Արսէնէ մը որուն որդին էր Թումա, անոր՝ Արզուման, որմէ կը ծնի Պաղճի՝ հայրը Տր. Աբրահամին որ իր հայրն էր (218 թ. ձեռագիր Ս. Յակոբեանց վանքին)։ Յաճախ և մասնաւոր կերպով կը յիշատակէ իր աշակերտը Սարգիս եպ.ը որուն մասին դըժբախտաբար ուրիշ տեղեկութիւններ չի տար։ Միայն մէկ անգամ կը յիշատակէ նաև Սարգիս եպ.ի հետ իբր աշակերտներ, Տ. Կիրակոս, Տ. Մարկոս և Տ. Գրիգոր անուն եկեղեցականները (թ. 69 ձեռագիր Ս. Յակոբեանց թանգարանին)։ Այս եպիսկոպոսը կը յիշատակուի երբեմն շռայլ տիտղոսներով, ինչպէս անգամ մը «զԵրիցս երանեալ Տն. Եսայի Աստուածաբանութեան քաջ րաբունապետն... ջահ անշիջանելի ... ընդդէմ հերձուածողաց եւ հերետիկոսաց» և այլն։

Եսայի եպ. Տէրէվանքցի, 1740ին Երուսաղէմէն դարձեալ Կեսարիա իր աթոռը եկա՞ծ է և ե՞րբ մեռած և ո՞ւր յայտնի չէ։ Իրմէ յետոյ երկար ատեն չեն յիշատակուիր վանահայրերու անունները և ինչպէս կը տեսնուի Ս. Սարգիս վանքը կ'ենթարկուի Ս. Կարապետի Առաջնորդ-վանահօր իշխանութեան որ հոն կը ղրկէր տեսուչ վարդապետներ, որոնցմէ ծանօթ են.

**Սարգիս վրդ. Թալասցի** (1798) Հաւանօրէն Ս. Կարապետի միաբանութենէն որ կը յիշատակուի 1798 թուականին։ Ասիկա ծախու առած է վանքին պարտէզը դրան վրայ գրուած սա յիշատակարանին համաձայն. «Յիշատակ է պարտէզս այս ի սուրբ Սարգիս վանս, Թալասցի Սարգիս վարդապետի, արդեամբ համայն ժողովրդեան ՌՄԽԷ» (= 1798):

**Զաքարիա վրդ. Նէմէրէկցի** (1800) Ս. Կարապետի միաբանութենէն ըլլալը կը յիշուի Ստեփան եպ. Օֆլազանի առաջնորդութեան շրջանին (1798-1824)։ Իր այս վանքին մէջ ունեցած գործունէութեան մասին ոչինչ գիտենք։

**Գէորգ վրդ. Կեսարացի** (...—1810-1812†) Ճիվան Աչըգեան կը հաւաստէ թէ այս վարդապետը շինած է Ս. Գէորգի մատուռը 1810ին։ Ինչպէս ըսի, թաղուած է առընթեր Յովհաննէս վրդ.ի՝ վանքին մէջ։

իր տապանաքարին վրայ կը կարդացուի. «Ի սոյն տ. հանգուցեալ Կեսարացի Գէորգ վարդապետի մարմինն կայ հանգուցեալ. թուին ՌՄԿԱ.» (1812)։

**Կարապետ վրդ. Թալասցի** (...1820–1844†) Ս. Կարապետի միաբանութենէն պէտք է ըլլայ։ Այս անունով վարդապետ մը կը տեսնուի արդէն Ստեփան եպ.ի ժամանակակից միաբաններուն մէջ (տես Հայ Վանօրայք, էջ 59)։

Կարապետ վրդ. Թալասցի իր պաշտօնը շարունակած է մինչև իր մահը՝ 1844. Տրդատ եպ. այնպէս կը կարծէ թէ ան պահ մը հրաժարած է և երկու ուրիշ վարդապետներ Սարգիս վրդ. Թալասցի՝ 1826ին(1) և Յակոբ վրդ. Պոլսեցի (1827–1837†)(2) վանահօր պաշտօն վարելէ յետոյ դարձեալ Կարապետ վրդ. Թալասցի երկրորդ անգամ պաշտօնի անցած է, սակայն ասիկա ճիշդ չէ, վասնզի 1834ին զինքը յիշուած կը տեսնենք վանահայր, նոյնիսկ Տրդատ եպ. Պալեանի ընդօրինակած մէկ յիշատակարանին համաձայն, իր խնդրանքով Կիւլապի Աղա Կիւլպէնկեան (հայր Սերովբէ և Սարգիս Զէլէպիներու) յանձն կ'առնէ շինելու վանքին համար վիմափոր ջրամբար մը, որ կիսաւարտ կը մնայ թէ՛ վանահօր և թէ՛ բարերարի մահուան պատճառով, և կ'աւարտի իր զաւակներուն օժանդակութեամբ (Ճիվան Աչըգեան, նոյն, 171–172)։

**Փիլիպպոս վրդ. Պօղոսեան Թոմարզացի** (1847) Ս. Կարապետի միաբանութենէն և ժամանակակից Կեսարիոյ Առաջնորդ Գաղատացի Յակոբ եպ.ի (1829–1838) (տես Հայ Վանօրայք, էջ 62)։

**Գաբրիէլ վրդ. Մկրտիչեան Կեսարացի** (...)

**Մեսրոպ վրդ. Խորոզեան Պալաքէսեցի** (...–1877) Ս. Կարապետի միաբանութենէն (Հայ Վանօրայք, 62)։

**Դանիէլ վրդ. Բարսեղեան Տէրէվանքցի** (1877–1893) (իր կենսագրութիւնը տես Կեսարիոյ յեղափոխական շարժման մէջ)։ Իր վանահայրութեան շրջանին վանքը միաբանութիւն ունենալէ դադրած է և միայն ինքն էր միաբան և տեսուչ։

**Գարեգին վրդ. Սմսարեան** (1899) որ ապաշխարութեան համար Կեսարիա կը գտնուէր փոխ-վանահայր կը կարգուի, սակայն Մանճըլըգ կը մեկնի և պաշտօն չի ստանձներ։

**Ներսէս վրդ. Ըօրգյեան կամ Ծխլըեան** (1900) Տրդատ եպ. տեսչութեան կը կոչէ վանքին այս վարդապետը որ 1887էն սկսեալ կը գտնուէր Ս. Դանիէլի վանքը և կը դասախօսէր Սանտալճեան եպ.ի հաստատած վարժարանին մէջ հայերէն, ֆրանսերէն, թուր-

(1) Տրդատ եպ. Պալեան այս շփոթութեան մէջ ինկած է վանքին մէջ սենեակի մը սա յիշատակարանը կարդալով «յիշատակ է բաղդրատող եւ գեղեցկացուցիչ սենեակս Կեսարացի ջէրջի Պետրոսի որդի ընկեր չորեքտասանից պարոն Դանիէլին ննջեցելոց եւ կենդանեացն, վասն հոգւոյն, ջանասիրութեամբ Սարգիս վարդապետին, թուին ՌՄՀԵ.» (=1826)։ Ինչպէս կը տեսնուի հոս վարդապետին առաջնորդ կամ վանահայր ըլլալու մասին խօսք չկայ։ Իր ջանքովը եղած ըլլալը երբեք չի նշանակեր թէ իր վանահայրութեան օրով է։

(2) Տրդատ եպ. Պալեան անոր գերեզմանը կ'երեւայ թէ տեսած է, վասնզի կ'ըսէ թէ վախճանած է 1837ին վանքին մէջ (Հայ Վանօրայք, էջ 85). սակայն ասիկա ալ թոյլ չէր կրնար տալ զինքը վանահայր կարծելու։



քերէն և ձայնագրութիւն։ Այս եկեղեցականը ի վերջոյ 1903ին թողուց կուսակրօնութիւնը և ուսուցչական ասպարէզ մտաւ։ Այս եկեղեցականին տակաւին Ս. Դանիէլ գտնուած ատեն սկսաւ Հայ եկեղեցւոյ բարեկարգութեան հարցը յուզել անոր հիմը համարելով վարդապետութեան աստիճանին ջնջումը և ամուրի եկեղեցականներուն ամուսնութեան արտօնութիւնը։ Հայ մամուլը և Պատրիարքարանը շատ զբաղեցան իր գրածներով։ Տէրէվանքի տեսչութիւնը ընդունած ըլլալը որոշ չէ։ 1903էն յետոյ Սըվզըն հաստատուեցաւ և ամուսնացաւ։ Մինչև տարագրութիւն ուսուցչութիւն կ'ընէր։

**Սարգիս վրդ. Միքայէլեան Թոմարզացի** (1900–1915) Ծնած է 1858ին։ Ձեռնադրուած է 1885ին։ Միաբան Ս. Կարապետի վանուց։ Վերջին տեսուչ-վարդապետը եղաւ վանքին։ Տէրէվանքի ժողովուրդին հետ տարագրուելով միասնաբար Նահատակուեցաւ ճանապարհի ընթացքին։

Ս. Սարգիսի վանքը ծաղկեալ ու շէն էր մինչև 1915։ Թրքական բարբարոսութիւնը որ այնքան նախանձախնդիր եղած է Հայոց գոյութիւնը յիշեցնող յիշատակարաններն իսկ ջնջելու, Ս. Սարգիսի այս հնօրեայ վանքն հողակոյտ մը և անոր վիմափոր եկեղեցին՝ ոչխարներու փարախի մը վերածած է։

4. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԹՈՄԱՐԶԱՅԻ. — Թոմարզայի արեւելեան կողմը, կառուցուած այս վանքը, որուն հիմնարկութիւնը կը վերագրուի Թադէոս Առաքեալին (1) — անշուշտ աւանդութեամբ որուն արձագանգ եղած են կոնդակներ — մինչ պատմական տուեալներով ԺԲ. դարէն աւելի հնութիւն չունի։ Կարապետ վրդ. Հազարեան փոխ-վանահայր նոյն վանքին, կ'ըսէ թէ «վանուցս գոյութիւնը գրեթէ հինգ դարու մօտ հնութիւն մ'ունի, ինչպէս ճշմարտապէս կը վկայէ հին թուական մը» (Մանզումէ, 1902, Օգոստ. 4, թ. 389), ինչ որ շատ որոշ չէ թէ ի՞նչ թուականի կ'ակնարկէ։ Կ'երեւայ թէ հնագոյն թուականով յիշատակարան մը իրեն ծանօթ էր, մինչ ինծի ծանօթ ամէնէն հին յիշատակարանը 1516 թուականով՝ 1222ին Սիս գրուած Աւետարանին, այն ծանօթագրութիւնն է որ կը յայտնէ թէ Մովսէս քհ. կազմած է զայն «ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի» «ի գիւղն ուր կոչի Տումարզայ»։ Այդ թուականէն յետոյ զանազան յիշատակարաններու մէջ (1570–1588) կը յիշատակուի այս Ս. Աստուածածինը, երբ Թոմարզա արդէն շնորհիւ Տարօնեցի Աստուածատուր եպ.ի եղած էր մտաւորական փայլուն կեդրոն մը, որ իր համբաւը և հմայքը պահած էր բաւական երկար ատեններ, և ԺԷ. դարուն սկիզբը դարձած՝ նշանաւոր ուսումնավայր մը, ուր կը դիմէին հեռու տեղերէ, ինչպէս կը հաստատէ Մեսրոպ Կաֆայեցի դպիրը որ էր «աշակերտ Տեառն Յովհաննէս Կաթողիկոսի Սիս աթոռոյ» (Հ. Ալիշան, Կամենից, էջ 168)։

Այս ուսումնասէր անձը «մինչ ... դասատուն վեհին...ի Սեբաստիա» էր

(1) Ա. դարուն իբր թէ հոն շինուած է Թադէոս-Բարթողիմէոսի մատուռը, որ յետոյ հալածանքներու ատեն երբ քրիստոնեաները կոտորուած են, աւազով ծածկուած է և երբ Թոմարզա վերստին շէնցած է պատահմամբ գտնուած և անոր կից շինուած է Ս. Աստուածածին եկեղեցին (Յ. Ըլլանճեան)։

*կը գրէ* «դժուար եւ խրթին մասեանս սօմարական արհեստից մեկնութեանս» (*նոյն*). *և կ'ընդօրինակէ* «մեկնութիւն Երեմիայ Մարգարէի» *գործը* (*թ*. 1082, *Երուսաղէմի*) *որուն վերջը ունի չափազանց հետաքրքրական յիշատակարան մը ուր կ'ըսէ թէ* «Զծոյլս 'ի բարիս եւ զարագս 'ի չարիս, յոկ անուամբ միայն **Մեսրոպ Կաճայեցի** ապաաւոր բանի, բազում ջանիւ զայսչափ մեկնութիւնս. ի յոյս հանի կարի հին օրինակէ, կարծեմ թէ օրինակն գրած է Մեծին Քօշ Մխիթար(1) վարժապետի որ եւ մեկնութիւնն նորա արարեալ է: Այսպէս հին եւ փտեալ ու եղծեալ գտի զմեկնութիւնս, որ եւ բազում խնդիրս արարի յաղագս մեկնութեան Երեմիայի որ եւ ելեալ իմ ի խնդիր Կաճայոյ մինչեւ ի Էջմիածին, Վաղարշապատն, 'ի Խորվիրապն եւ 'ի Սաղմոսա-



ԹՈՄԱՐԶԱՅԻ ՎԱՆՔ

վանքն, ի Սանահին եւ Հաղբատն, ոչ գտի: Յետոյ եկի յեհաց տունս եւ ոչ գտի, գնացի մինչեւ Հալէպ եւ ոչ գտի: Դարձայ Հալպայ ի **Կեսարիա** եկայ եւ անդ գտի, զոր որոնեաց անձն իմ մի ոմն ի բանասէրէ **Սասունցի Ազարիա** վերակոչեցելոյ. բայց խիստ էր եղծեալ օրինակն. ապաւինեցայ յԱստուած, սկսի ի թրն-նութիւն ՌԿԸ (=1619) **ի Թօմարզու վանքն Ս. Աստուածածնի** եւ աւարտեցի զսա ՌՀ. (=1621) թվ., Պօղոսանց յերկիրն ի Սեչով Ս. Օգսէնդ վանքն:

(1) *Դրիչը կասկածով գործին հեղինակութիւնը կը վերագրէ Մխիթար Գոշի։ Կիրակոս պատմիչ կը հաստատէ թէ անիկա ունէր Երեմիայի մեկնութիւն մը։ Էջմիածնայ մատենադարանին* (*թ*. 1228) *և Արդնոյ Բարձրահայեաց Ս. Աստուածածնայ վանուց մատենադարանին* (*թ*. 224) *գրչագիրները Գոշի անունով կը յիշատակեն Երեմիայի Մեկնութիւնը* (*տես* Պատմ. Հայ Դպրութեան, *Վենետիկ*, 1897, *էջ* 697)։



Զորս գտայ ի մեկնչէ եւ զորն տխմար մտաց իմոց շարադրեցի եւ զորն ոչ գտայ՝ պարապեալ թողի: Աղաչիմ զգաղաբարողսդ զյիշատակս իմ գրեսջիք եւ զաշխատութիւնս իմ մի՛ եղծուցի եւ ձեռն գրեսցի ի դպրութիւն կենաց»:

«Օրինակուած ձեռամբ նորին Մեսրոպայ եւ քեռորդոյ իւրոյ Ներսէսի»:

*Ինչպէս կը տեսնուի Մեսրոպ Կաֆայեցի ինչ որ չէր գտած Էջմիածին, Վաղարշապատ, Խոր Վիրապ, Սաղմոսավանք, Սանահին և Հաղբատ, Խրիմ և Լեհաստան, նոյնիսկ Հալէպ, գտած էր Կեսարիա, Սասունցի Ազարիա կոչուած բանասէրին մօտ, և հոն իր եղծեալ ձեռագիրը բաղդատած էր, Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին մէջ 1619ին։ Սասունցի Ազարիա «փիլիսոփայ»* (†1628) *կոչուած՝ աշակերտն էր Գրիգոր վրդ. Կեսարացիի* (Դարանաղցի, *էջ* 410–412), *որ կ'երեւայ թէ յետոյ Թոմարզայի վանքը հաստատուած՝ և Աստուածատուր Տարօնեցիի սկսած գործը շարունակած էր։*

*Այս ուսումնական շարժումն և Թոմարզայի այդ շրջանին եպիսկոպոսական աթոռ մը ըլլալը հաւանական է որ պատճառ եղած է Ս. Աստուածածին եկեղեցիին շուրջ վանքի մը կազմակերպութեան, վասնզի 1619ին առաջին անգամ է որ «վանք» բացատրութիւնը կը գործածուի Ս. Աստուածածինին համար, և որուն «Ս. Ուխտ» մը ունենալը կը յիշուի մինչև 1638 մի քանի ձեռագիրներու յիշատակարաններուն մէջ։*

*ԺԷ. դարուն կէսէն յետոյ կը թուի թէ վանքը անշքացած է վասնզի 1661–1675 գրուած չորս գրչագիրներու մէջ դարձեալ վերադարձ մը կը տեսնենք դէպի հնագոյն ձեւը* «ի դուռն Ս. Աստուածածնի եւ Ս. Պետրոսի եւ Պօղոսի»։ *Հետեւաբար կը տարուիմ մտածել թէ առնուազն ԺԶ. դարուն սկիզբներէն Թոմարզայի մէջ գոյութիւն ունէր Ս. Աստուածածին մենարանը կամ եկեղեցին, որ ԺԷ. դարուն սկիզբը վանքի կը վերածուի և կարճ փայլ մը ունենալէ յետոյ կ'անշքանայ և կը դադրի միաբանութիւն ունենալէ, թէև չի դադրիր վանք մը ըլլալէ։*

*Մեր այս տեսութեան ուժ տալ կը թուի վանքին մէջ գտնուած հնագոյն արձանագրութեանց թուականներուն ձեռագրաց յիշատակարաններուն ժամանակով շատ մօտ ըլլալը։*

*Անոնք թուով հինգ վիմագիր արձանագրութիւններ են որոնք գտնուած են 1870ին վանքին հին եկեղեցւոյն նորոգութեան ատեն։*

*Անոնցմէ երկուքն տապանաքարեր են, երկու նահատակներու, հետեւեալ արձանագրութիւններով.*

1.— «Այս է տապան Հանրնցի Վասիլ սարկաւագին, որ սպանաւ ի յանօրինաց ի թուին. ՌԾԶ.» (=1607):

2.— «Այս է տապան Քացխլերցի Յովհաննէս, որ սպանաւ ի յանօրինաց ի թուին ՌԾԷ.» (= 1608):

*Հաւանօրէն այս նահատակները զոհերն են նոյն թուականին Փոքր Ասիան շփոթի մատնող Ճելալի աւազակներուն։*

*Միւսներէն երկուքը յիշատակելի դէպքերու արձանագրութիւններ են, աւելի ուշ թուականով։*

1.— «Ես Միքայէլ Նազար սարկաւագ էի, աւրհնեցայ թվին. ՌՃԺԶ (=1667) Փետր. ԻԴ. աւր Կիրակի»:

2.— «Ես մեղաւոր ծառայ Աստուծոյ Գաբրիէլ Դպիրս քահանայ աւրհնեցայ ի թվ. ՌՃԻ» (=1671):

*Իսկ հինգերորդ քարին վրայ կայ սա մենագիրը որ անկարելի է մեկնաբանել. «Օ Ն Ը Մ Վ»։*

*Գալով վանքին շինուածքին, մէկ կողմ թողլով այն աւանդութիւնը որ հոն նախապէս գտնուած էր մատուռ մը Թադէոս և Բարթողիմէոս անունով* (տես Յարգանք Տասնամեակին, 1919, *Շիքակօ, էջ* 11), *որուն տեղը և հետքը չի կար, հնագոյն շինուածքն էր փոքր և հին Ս. Աստուածածնայ եկեղեցին, որուն կառուցուածքը կը հաստատէր նաև վանքին հնութիւնը։ Ասոր տեղացիք կուտան* «Հին Վանք» *անունը* (Բիւզանդիոն, *թ.* 2552)։

*Այս եկեղեցիին մէջ դեռ մինչև ընդհ. պատերազմ կը մնար, շատ հին ժամանակներէ ի վեր զետեղուած մեծ քար մը, որուն վրայ հին ճարտարապետական արուեստով և հին ոճով ութ հատ խաչեր քանդակուած էին։ Այս քարին համար կ'աւանդուէր թէ օծած է Թադէոս Առաքեալը։ Այս հին եկեղեցին յիշատակարան չունէր դժբախտաբար, բացի վէմքարին վրայ տեսնուած հետեւեալ յիշատակարանէն որուն լրիւ ընթերցումը չէ կրցած կատարել Տրդատ եպ. Պալեան, անոր մէկ մասին քարին տակ մնացած ըլլալուն համար։*



ԹՈՄԱՐԶԱՅԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔԻՆ ԱՒԱԳ ՍԵՂԱՆԸ

«Յիշատակ է Սբ. վէմս ի Տէր Պետրոս վարդապետին, հօրն Նազարէթին, մօրն Ղատէմին, եղբօրն Յովհաննէսին, Անդրիկին, Գրիգորին...»:

*Դժբախտաբար յայտնի չէ թէ ո՞վ է Պետրոս վարդապետ և ե՞րբ ապրած է, որպէսզի կարելի ըլլար շէնքին սկզբնական կառուցման թուականը ճշդել։ Այս եկեղեցիին մէջ գտնուած էին վերը յիշատակուած և* 1607–1671 *չորս զանազան թուականներով արձանագրութիւններ կրող քարերը։*

*Այդ եկեղեցիին խորանին վրայ կը գտնուէր ըստ Պալեան եպ.ի, հնութիւնը ակներև թանկագին պատկեր մը, որուն վրայ գրուած էր.*

«Յիշատակ է պատկերս Ս. Աստուածածնի վանքին, Վարդուկին եւ կողակցոյն Մարիամին, եւ որդւոյն Յովհաննէսին եւ կողակցոյն Կուհարին, եւ Տիրին Խալֆայի որդւոյն Յարութիւնին, Նիկողոսին եւ իւրեանց ննջեցելոց հոգւոյն ամէն, թուին ՌՃԻ» (= 1671):

*Այս պատկերին համար կ'ըսէին աւանդաբար թէ զայն նկարած է Կ. Պոլսոյ Գարա Գէօմրիւկի Յոհան Ոսկեբերան այրած եկեղեցւոյն Զարխափան Ս. Աստուածածնայ պատկերին* (*հիմա Պալաթ փոխադրուած*) *նկարիչը* (Բիւզանդիոն, *թ.* 2552)։

*Անգլիացի անանուն ճամբորդ մը որ Թոմարզայի վանքէն անցած է հարիւր տարի առաջ կ'ըսէ թէ* «վանքին շինութեան թուականը որոշել շատ դժուար էր. եկեղեցին եւ խուցերը նոր էին, բայց հին մատուռ մը կար, որ շատ հետաքրքրական էր» (Հայաստանի Կոչնակ, 1934, *էջ* 318)։

*Հաւանօրէն այդ մատուռը Ս. Աստուածածինն էր որուն նկարագրութիւնը կու տար այդ անգլիացի ճամբորդը, ըսելով թէ* «պատերու քարերէն ոմանք տասն վեց ոտք երկարութիւն ունէին, որ պահած էր շէնքը ժամանակի աւերումէն: Դուռը զարդ չունէր, ներսը ծածկուած էր կապոյտ մոզայիքներով: Դրան վրայ հին արեւելեան ձեւով հիւսուածաբար խաչ մը քանդակուած էր, նմանապէս ուրիշ ութ խաչեր եւս կային պատերու վրայ, իբրեւ նշան օրական ինն անգամ պաշտամունքի» (*Նոյն*)։

*Ասոնք ամէնը իրարու քով բերելով հաւաստի կարելի է ըսել թէ Ս. Աստուածածին եկեղեցին առնուազն ԺԶ. դարու շինութիւն մըն էր, թէև կրնար շատ աւելի հին ալ ըլլալ։*

*Այս եկեղեցին նորոգուած էր* 1870*ին և այս առթիւ ճակատի դրան վրայ զետեղուած՝ հետեւեալ յիշատակարանը։*

«Կամարայարկ Սբ. Աստուածածին առաքելաշէն Սբ. եկեղեցին զմբէթայարկ նորոգեցաւ Թալասու առ հասարակ ժողովրդեան կենդանեաց եւ ննջեցելոց հոգւոյն, ջանասիրութեամբ Կիւլպէնկեանց ազնուատոհմ զարմից յամի Տեառն 1870 Մայիս 25»:

*Այս ժամանակով ամէնէն հին շինուածքին՝ Ս. Աստուածածնայ փոքրիկ եկեղեցիին հարաւային կողմը նախ շինուած է* 1822*ին փոքրիկ մատուռ մը յանուն Ս. Կարապետի։*

*Այս մատուռին յիշատակարանն է.*

«Նորոգ շինեալ այս սուրբ Տաճար,
Արդեամբ ուրուք բարեհանճար,
Կեսարացի Ղապա Սախալեան,
Օրհնեալ Յակոբ Տէր Սարգիսեան,
Ջանս աշխատանս ի սմա կրեալ,
Սուրբ Կարապետ սեղան կանգնեալ,
Որք հանդիպիք ի սուրբ տեղիս,
Խնդրի ի ձենջ մի ողորմիս,
Ի թուին ՌՄՀԱ» (=1822):

*Այսպէս վանքը այդ թուականէն յետոյ կ'ունենայ երկու փոքր եկեղեցիներ։*

1849ին կը ձեռնարկուի երրորդի մը շինութեան, հոյակապ և աւելի մեծ քան երկու նախորդները։ Ան կը շինուի Ս. Աստուածածին հին եկեղեցիին քովը և անոր կից և կը կոչուի Ս. Խաչ անունով։ Շինութիւնը կը տեւէ երկու տարի (1849-1851)։ Եկեղեցին բաւական ընդարձակ, լուսաւոր և հաստատուն շէնք մըն էր և ունէր գեղեցիկ կաթողիկէ մը։ Շինուածքին ձեւը խաչաձև է և հայկական գմբեթով հոյակապ շէնք մըն է։ Տաճարին հիմքը և շրջակայքը կը կազմեն 15-20 կոտր խոշոր քարեր որոնց վրայ կանգնած է այդ հոյակապ շէնքը։ Շինութեան ծախքերը հոգացած է Կեսարացի Յովհաննէս աղա Եազըճեան, ջանիւք և աշխատութեամբ Թօմարզացի Բարսեղ վարդապետի, որ այն ժամանակ վանքին Տեսուչ վանահայրն էր։ Այս նոր եկեղեցւոյն պատերուն արտաքին կողմը 15-16 կանգուն երկայնութեամբ և 2 կանգուն լայնութեամբ շատ հաստ քարեր զետեղուած են։

Այս նոր եկեղեցւոյն մեծ դրան վրայ հետեւեալ յիշատակարանը գրուած է.

«Յովհաննէս աղա բարելի վարուք
Եազըճեան կոչեալ մեծազգի նախնեօք,
Ի Կեսարիա գոլով հայրենեօք,
Բնակի ի Պոլիս շքեղ յարգանօք:
Ջերմեռանդ ուխտիւ արդեամբ առանձին,
Փութացաւ լնուլ զփափաք իւր սրտին,
Կառոյց այս շքնաղ սուրբ եկեղեցին,
Յանուն Զարխափան Սուրբ Աստուածածնին(1).
Յանմահ յիշատակ ազնիւ իւր անձին,
Եւ բարեժառանգ որդւոց եւ զարմին,
Ջանաց մեծապէս ի շինուած սորին,
Բարսեղ վարդապետ ընտիր րաբունին:
Յամի Տեառն 1850

Այս թուականին վանքին արեւմտեան արտաքին մեծ դրան ճակատը կը զետեղուի նաև սա արձանագրութիւնը.

«Բան եւ ծնունդ Հօր Միածին Աստուած
Շքեղ տաճարս այս ի զմբէթ նորոգեաց,
Յանուն առաջնոյն Տիրամայր կոչեաց,
Երկրորդին անունն է Սուրբ Խաչ կենաց,
Ջանիւք եւ սրտիւ զիւղիս հայկազանց,
Օրհնեալ Թօմարզա քաջ ժողովրդեանց,
Ի յաջորդութեանս ընտիր րաբունեաց,
Տեառն Բարսեղի եւ Սարգսի տեսչաց:
Յամի Փրկչին 1850 Սեպտ. 1»:

Ասկէ կը հասկցուի թէ վանքը Ս. Խաչի շինութեան առթիւ ընդհանուր նորոգութեան մը ենթարկուած է։ 1855ին Ս. Խաչի մէջ երկու ամպիոններ կը շինուին, որուն ձախակողմեանին յիշատակարանն էր

(1) Թէև այս արձանագրութեան մէջ տաճարը յանուն Զարխափան Ս. Աստուածածնի կառուցուած ցոյց կը տրուի սակայն վանքին արտաքին մեծ դրան վրայ գրուած արձանագրութիւնը կը ճշդէ թէ Ս. Խաչ անունով տեառնագրուած է։






ԹՕՄԱՐԶԱՅԻ ՎԱՆՔԻՆ ԿԱԼԸ

1. ԱՆԴՐԷԱՍ ԹԷՔԷԵԱՆ, ԹՕՄԱՐԶԱՅԻ ՎԱՆՔԻՆ ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ԱՇԽԱՏՈՂ ԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄԸ ՈՐ ԿԵՍԱՐԻՈՅ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԱԼ ԵԿԵՂԵՑԻԻՆ ԹԱՂ. ԽՈՐՀՈՒՐԴԻ ԱՆԴԱՄ ԷՐ: ՍՊԱՆՆՈՒԱԾ ՏԱՐԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ: 2. ՍԱՐԳԻՍ ԱՐՁՈՒՄԱՆԵԱՆ ՎԱՂԵՄԻ ՈՒՍՈՒՑԻՉ ԿԻՒՄՇԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ: 3. ԹԱԼԱՍՑԻ ՍԱՐԳԻՍ ՎԷԶԻՐԵԱՆ, ՄԵՌԱԾ ՏԱՐԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ: 4. ՃԻՎԱՆ ԹԷՔԷԵԱՆ, ՎԱՃԱՌԱԿԱՆ Ի ԹՕՄԱՐԶԱ: ՄՆԱՑԵԱԼՆԵՐԸ ՎԱՆՔԻ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ, ՄՇԱԿՆԵՐ ԵՒ ՈՒԽՏԱՒՈՐՆԵՐ ԵՆ:

«Դշխոյին երկնից Ս. վանուցս սատար
Յիշատակ անման ուխտիս կամակար,
Դերձակեան զարմէ Եղիաս սեւատար,
Զօնեաց զամպիոնս այս կրկնայարմար
Ի թիւ Հայոց 1 Դեկտ. ՌՅԴ (= 1855):

Իսկ աջակողմեանին վրայ կը կարդացուէր.

«Առ ընկալ սիրով դշխոյ գերափառ
Յիշատակ անջինջ յանուն քո պայծառ,
Ամպիոն կրկին գեր սուրբ գեղավառ
Զօնեալ յԵղիա սեւակրէ Հէվկառ»:

Այս շինութիւնը կատարող Եղիա Դերձակեան սեւատար կամ սեւակիր, նոյն ինքն նոյնանուն Առաջնորդ վանահայր վարդապետն է Ս. Կարապետի վանուց որ ծնած էր արդարեւ Հէվքառ=Էֆքէրէ։

Երեք եկեղեցիներու շուրջը վանքը ունէր գեղեցիկ հիւրանոցէ մը զատ, որ կը բաղկանար 2 սրահ և 6 սենեակներէ, միաբաններու և ուխտաւորներու յատուկ թաղեր, 30–35ի չափ սենեակներով։

Ասոնց մէջ կար շքեղ սենեակ մը, որուն պատերուն վրայ ճարտարօրէն նկարուած էին այլ և այլ նշանաւոր քաղաքներու տեսարաններ, ի մէջ այլոց Կ. Պոլսոյ, բաւական յաջող վրձինով մը (Բիւզանդիոն, թ. 2552)։

Ունէր նաև շտեմարաններ, մառան, խոհանոց, սեղանատուն, և կենդանիներու յատուկ ախոռներ և գոմանոցներ։

Վանքի ստացուածքները կը բաղկանային 30 կոռ 300–350 արտավար մշակելի հողերէ(1), ինչպէս նաև բանջարեղինաց պարտէզէ մը, երկու ջաղացքէ և գիւղին մէջ երկու խանութէ։ Վանքը ունէր նաև բաւական ոչխարներ և տաւար։ Վանքին մէջ յառաջ գացած էր մշակութեան գործը և մեղուաբուծութիւնը։

Դրամական արդիւնքն կ'ըլլար տարեկան գրեթէ 100 օսմ. ոսկի, որ կը գոյանար ուխտաւորաց նուէրներէ և ջաղացքներու և խանութներու տարեկան վարձքերէն։

Ցորեն, ճոն (=հաճար), գարի, պանիր, կաթ, միս եւայլն, առաջ կու գան արտերէն և ոչխարներէն և կը ծախսուէին վանքին մէջ միաբանութեան պիտոյքին համար, որով տարեկան ծախսը կը գոցուէր։

Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը չունէր հարուստ եկեղեցական սպաս և զգեստներ։ 1902ին Պատրիկ Կիւլպէնկեան այս վանքին նուիրած է պատարագի զգեստներ (Մանզումէ, թ. 389)։

1896ին Տրդատ եպ. Պալեանի նախաձեռնութեամբ բացուեցաւ նախակրթարան մը այս վանքին մէջ, 20–25 գիշերօթիկ և ցերեկեայ ուսանողներու համար 2 ուսուցիչներով(2)։ Աշակերտներէն մեծ մասը ձրի էր և մէկ փոքր մասը կը վճարէր տարեկան աննշան գումարներ իբր թոշակ։ Վանքը ունէր նաև փոքր գրադարան մը ուր կը

(1) Տ. Սեր. Աքհ. Գուրմայեան այս վանքին հողերը կը հաշուէ իբր 1000 արտավայր, և աւելի քան Ս. Կարապետի հողերը և անկէ աւելի բարեբեր։

(2) 1905ին հոն կը պաշտօնավարէին Արմաշէն շրջանաւարտ Յակոբ Աջապահեան և Պետրոս Մատաղճեան։



կը պահուէին 40 ձեռագիրներ և զանազան տպագիր գիրքեր։

Ինչպէս այլուր ըսի Թոմարզա 1570 թուականէն սկսեալ՝ եթէ ոչ աւելի առաջ, կազմած է քորեպիսկոպոսութիւն մը որուն եպիսկոպոսները յաճախ յիշուած են զոյգ Կեսարիոյ Առաջնորդներուն հետ։ Ասոնք մինչև ԺԷ. դարուն վերջը նստած են այս վանքին մէջ, որ ԺԸ. դարու սկիզբը անշքացման մատնուած է, չեմ գիտեր ինչո՞ւ, վասնզի 1698էն մինչև 1784, մօտաւորապէս հարիւր տարի ո՛չ վանքը և ո՛չ միաբանութիւն կը յիշուի, և ո՛չ ալ անոր պետը։

Հարիւր տարի այսպէս մոռացութեան մէջ թաղուելէ յետոյ կը յիշատակուի իբր դէտ կամ Առաջնորդ վանքին, սոսկ վանահայրի հանգամանքով ապահովաբար՝

**Բարսեղ վրդ. Ալլահվէրտեան Էվէրէկցի** (…— 1791) որուն պաշտօնավարութեան սկիզբը կը դնէ Տրդատ եպ. Պալեան 1784ին, ինծի անծանօթ տուեալներով։ Իր տապանաքարը կը մնար վանքին մէջ Ղունկիանոս վարդապետի մը տապանին հետ միասին, մէկ քարով, հետեւեալ արձանագրութեամբ.

«Այս է տապան Էվէրէկցի ոսկերիչ մհի Ալլահվերտեան Տեառն Բարսեղ դետի եւ Ղունկիանոս վարդապետի, հանգոյ տէր եւ ընկալ զհոգիս սոցայ, թուին Հայոց ՌՄԽ.» (= 1791):

Ուրիշ ծանօթութիւն չունինք իր մասին դժբախտաբար։ Չենք գիտեր նոյնպէս իր անմիջական յաջորդը։ Իր յաջորդներէն ծանօթ են հետեւեալները.

**Մեսրոպ վրդ. Կ. Պոլսեցի կամ Սկիւտարցի** (1805— …) Երուսաղէմի թանգարանը (թ. 2169) ունի «Անտառ նորազոյն մտածմանց եւ զէն ընդդէմ եօթն մահացու մեղաց» գործին — որ Կոլոտի դպրոցին թարգմանիչ Ղուկաս վրդ. Խարբերդցիի ձեռամբ իտալերէնէ թարգմանուած էր ժամանակին — ձեռագիրը, որ ընդօրինակած է, «յամի Փրկչին 1805, ի Թօմարզայ մեծ ի հրաշալի վանս Առաքելաշէն Զարխափան Ս. Աստուածածնի, ձեռամբ նորապսակ Առաջնորդին նորին Տեառն Մեսրոպայ մեղսակիր վարդապետի Պոլսեցւոյ», որ 1804ին ձեռնադրուած է Երուսաղէմի մէջ իբր վանքին միաբան (Աղաւնունի, Միաբանք եւ Այցելուք, էջ 284)։ Նոյն տարին զինքը կը գտնենք Կեսարիոյ Ս. Դանիէլի վանքը, ուր կ'ընդօրինակէ ձեռագիրներ որոնք հիմա կը մնան Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքը (թ. 689 և 690 ձեռագիրները)։

Մեսրոպ վրդ. Կ. Պոլսեցի յաջորդ տարին (1805) կ'երեւայ թէ կը տեղափոխուի Ս. Դանիէլէն Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը իբր վանահայր ուր չեմ գիտեր թէ որչափ մնացած է։ Միայն որոշ է որ 1812ին Երուսաղէմ է ուր կ'ընդօրինակէ 1771ին Մարտիրոս եպ.ի(1) կոնդակներուն և նամակներուն հաւաքածոն (Ձեռագիր թ, 158 Ս. Յակոբեանց մատենադարանին) և Պետրոս եպ. Բերդումեանի Աստուածանմանութիւն անուն գործը։ Մեսրոպ վրդ. վախճանած է Երուսաղէմի մէջ 1833ին։

Իր տապանագիրն է հետեւեալը. «Այս է տապան հանգստեան բնիկ միաբան Պոլսեցի ծերունի Մեսրոպ վարդապետին որ հանգեաւ. ոյք հանդիպիք

(1) Մարտիրոս եպ. Էջմիածնի միաբան երբեմն նուիրակ գացած է Հնդկաստան և ապա եղած է միաբան Երուսաղէմի։

տուք զողորմին ի ՌՄՁԲ. յուլիս 29» ( = 1833 ) (Աղաւնունի, Միաբանք եւ Այցելուք, էջ 284)։

**Բարսեղ վրդ. Թորոսեան Թոմարզացի**(1) (...1828-1852) Այս չափազանց ազդեցիկ և հեղինակաւոր եկեղեցականին վրայ Մոլթքէի գրածները արդէն ծանօթ են (տես վերը 653)։ Թուրքերը զայն կը կոչէին Նալլը Զարպաս կամ Նալլը Պարապաս։ Անշար աշիրէթապետը որուն դէմ կռուած է այս վարդապետը՝ էր Ղազան, որ ձեռք առած էր բոլոր քիւրտ գիւղերու ժողովուրդը և իր քմահաճոյքին կը ծառայեցնէր, թալլել, ջարդել, աւրել տալով այդ հողամասին՝ Տաւրոսեան լեռներու մօտերը գտնուած Հայ գիւղերը։ Ան յանդգնած է քանիցս Թոմարզայի վրայ ալ արշաւել՝ բայց յուսախաբ եղած է շնորհիւ Բարսեղ վրդ.ի և Սարգիս վրդ. Տէլի Սէյխեանի. Զօրպաճի Մհ. Յովհաննէս աղա Տ. Կիրակոսեանի, Մկրտիչ աղա Մատաղճեանի, Օհան Քեհեա Ուլունճեանի, Արթին աղա Մ. Սահակեանի, Տ. Յակոբ քհ. Պօյաճեանի և իրենց գործակից հարիւրաւոր քաջ Թոմարզացիներու։

Մոլթքէի գնահատութեան արժանացած այս եկեղեցականին պաշտօնավարութեան շրջանին և հաւանօրէն Մոլթքէէն քիչ առաջ Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը այցելած է նաև ըստ Ս. Զ. Թափալեանի «Անգլիացի անանուն ճամբորդ» մը որ իր գրած գիրքին մէջ կը նկարագրէ այս վանքը որ «դեռ կը պահէր փոքրիկ միաբանութիւն մը»։ Անգլիացին որ կ'երեւայ թէ մինակ չէր, արձանագրած է իր տպաւորութիւնները (տես Հայաստանի Կոչնակ, 1934, էջ 317) որոնք սիրով պիտի ուզէի նոյնութեամբ ընդօրինակել հոս եթէ համոզուած ըլլայի անոնց անկեղծութեան, վասնզի անոնք գրուած կ'երեւին չիւ նկատումներով, սոսկ վարկաբեկելու դիտումով Հայ կղերը, որպէսզի նպաստ մը բերեն «Տէրոջը այգիին մշակութեան գործին» կամ Բողոքականութեան տարածումին։ Անոնք պարզապէս ծթռած միսիոնար կը հոտին։ Ինչ որ նշանակելի է, սա է թէ, այս անգլիացին ինքն ալ կը հաստատէ թէ վանքին միաբանները «սրտոտ մարդիկ էին» մանաւանդ իրենց վանահայրը, որ ինչպէս տեսանք գիտէր նոյնիսկ ի հարկին զէնքով մաքառիլ։

Այս ազդեցիկ եկեղեցականը որ շրջակայ աւազակաբարոյ տարրերուն այնքան պատկառանք ներշնչած էր, շինարարութիւններ ալ ըրած է։ Անիկա նախաձեռնած եղած է 1847ին կառուցանելու վանքին նորագոյն շքեղ և հոյակապ եկեղեցին՝ Ս. Խաչը, իրեն գործակից ունենալով Թոմարզայի ընդհանուր բնակչութիւնը, որ այս առթիւ իր նիւթական և ֆիզիքական կարողութիւնը տրամադրած է։ Շատեր սկիզբէն մինչև վերջը աշխատած են ձրիաբար և ասով ալ չբաւականանալով՝ իւրաքանչիւր տուն, մէկ մէկ օր կարգաւ բոլոր աշխատաւորներուն կերակուր տուած է։

Արտաքին օգնութիւն ալ եղած է բարեպաշտ ազգայիններէ, ինչպէս Կ. Պոլիս հաստատուած Կեսարացի Յովհաննէս աղա Խաղճեան 900 ոսկի նուիրած է։ Բայց գործին ամբողջ ծանրութիւնը և տաղձներուն պատրաստութիւնը և փոխադրութիւնը Թոմարզացին իր ուսին վրայ առած է —բառերուն տառական և բարոյական իմաստով— և առանց սեռի խտրութեան իւրաքանչիւր ոք, իր մասնակցութիւնը

(1) Վտարանդին «Կարմիրցի» կը նշանակէ։



բերած է այս շինութեան գործին (Թորոս Մատաղճեան, Յարգանք Տասնամեակին, էջ 11–12)։

Խրիմեան որ իր աշխարհականութեան շրջանին Սիս գացած է իբր քննիչ և այս առթիւ անցած է Թոմարզայէն, ինքն ալ գովեստով կը խօսի Բարսեղ վրդ.ի մասին, նկարագրելով Ս. Խաչ տաճարին կառուցումը։

«Իբրեւ աւուր միոյ ճանապարհ հեռի 'ի Թալասու է Թոմարզա կոչեցեալ գիւղն. առ որով մերձ կայ վանք ինչ փոքրկառոյց եւ հնաւէն յանուն Սուրբ Աստուածածնայ, զոր 'ի հիմանց նոր հրաշակերտ կառոյց յաւուրս այսորիկ արիացեալն Բարսեղ վարդապետն բարեկարգիչ վանահայրն նորին վանից՝ առատաձեռն ծախիւք Կեսարացի սեղանաւոր Յովհաննէս Աղայի բնակելոյ 'ի Պոլիս, որ թէպէտ զաղթականութեամբ 'ի հայրենի գաւառէն հեռացեալ սակայն սրտիւ անանջատ մնալով՝ զայնպիսի չքնաղագեղ, պանծալի տաճար 'ի նմին կանգնել յօժարեցաւ 'ի վերայ բնիկ հայրենի հողոյն եւ ոչ յօտարին, յաւերժ յիշատակ ազգասիրին իւրոյ: Ոչ մոռացայց՝ արժանապէս յիշատակել ընդ սոյն մեծապարգեւ իշխանին եւ զջերմեռանդ անվարձ աշխատութիւն Թոմարզայու ժողովրդոցն, որք առ հասարակ արդարեւ կանայք յորդորեալք 'ի բանէն սիրելի վանահօրն խուռն բազմութեամբ ի նոր փութային եւ աշխատէին հանապազօր ընդ հող եւ ընդ քարինս, որոց քրտանց քաղցրահոտ կաթիլքն հաճոյ են իսկ առաջի Աստուծոյ քան զառատանուէր տուրս մեծատանց: Այլ միթէ ո՞ւխտ եղեալ էր յիշեալ մեծարելի վանահայրն Բարսեղ. որ 'ի յաւարտումն վայելչաձեւ յարմարաւէտ տաճարիս՝ անդէն հասանէր 'ի վերայ նորա վախճանի կենաց՝ եւ ելեալ յիւրաւէն 'ի նիւթական տաճարէն՝ մտանէր յերկինս առ Աստուած յանձեռագործ տիրաւէն տաճարն ընդ երկրաւորին զերկնաւորն ընկալեալ» (Արծիւ Վասպուրականի, Ա. տարի, 1855, թիւ 4, էջ 50)։

Բարսեղ վրդ. Թորոսեան Թոմարզայի Ս. Խաչ տաճարին շինութիւնը հազիւ աւարտած և 700 ոսկի պարտք մըն ալ նոյն առիթով թողլով, կը վախճանի և կը թաղուի վանքին մէջ, ուր կը կարդացուէր հետեւեալ տապանաքարը։

«Ննջէ ի շիրմիս վեհագոյն ոգին,
Տեառն Բարսեղի ընտիր Րաբունին,
Նմանեալ փառօք Ներսիսի մեծին.
Կերտեաց այս Տաճար տեղի անեղին,
Թողեալ անկատար զփափաք սրտին
Ընկալաւ անեղծ պսակ անմահին,
1852.

Հոս փակագծի մէջ ըսեմ թէ Կ. Պոլսոյ Ազգային Պատրիարքարանի արձանագրութեանց մէջ հանդիպած եմ 1846 թուականով Պէրաթի մը ստացման յանուն Կարապետ վրդ. Վանեցիի մը որ Թոմարզայի Առաջնորդ կը կոչուի։ Նկատելով որ Բարսեղ վրդ. Թորոսեան առնուազն 1828էն սկսեալ կը վարէր այս պաշտօնը, և նոյն պաշտօնին մէջ մնացած է մինչև 1852, զարմանալի կը թուի մեզի այս անուանումը։ Արդեօք 1847ին Պատրիարքարանը փորձա՞ծ է այլուր փոխադրել այս գործունեայ վարդապետը։ Անիկա մեզի կը մնայ անծանօթ։

**Սարգիս վրդ. Տէլի Սէյխեան Թոմարզացի** (1852—...) Տրդատ եպ. Պալեան զայն կը ճանչնայ «Դալայճեան» մականունով։ Թորոս Մատաղճեան (Յարգանք Տասնամեակի, էջ 12, 17 և 42) և Յակոբ Ըլլանճեան

կը յիշատակեն Տէլի Սէյիսեան մականունով։ Այս անձն որ Ս. Կարապետի միաբանութենէն էր, Բարսեղ վրդ.ի գործակիցը եղած է եկեղեցւոյ շինութեան գործին մէջ և յետոյ ալ անոր յաջորդելով իբր տեսուչ, վճարած է վանքին 700 ոսկի պարտքը, շատ դիւրութեամբ, շնորհիւ Թոմարզայի Հայոց առատաձեռնութեան։

Սարգիս վրդ. Տէլի-Սէյյիսեան, ինքն ալ իր կարգին համբաւաւոր և ազդեցիկ անձնաւորութիւն մը եղած է։ Հաճընցի աղաներ իրենց անտանելի հալածանքներուն համար կը դիմեն այս վարդապետին և կը խնդրեն որ միջոց մը գտնայ հալածանքը մեղմելու և վերոտին ապստամբած Ղազան Աւշար աշիրէթապետը զսպելու համար։ Սարգիս վրդ. նկատելով որ այս աւազակը Թոմարզայի ալ վտանգ կ'սպառնայ, անմիջապէս Կ. Պոլիս կ'երթայ և Տատեան Պօղոս պէյի միջոցաւ կառավարութեան կը դիմէ։

Օսմ. պետութիւնը Ղազանը նուաճելու համար Ղուրտ Իսմայիլ փաշայի հրամանին տակ բանակ կը ղրկէ Թոմարզա և Հաճըն, և կը յաջողի Թոմարզայի Զորպաճիին՝ Մ. Յովհաննէս աղա Տէր Կիրակոսեանի ձեռքով Ղազանը պարտութեան մատնել և սպանել։ Հաճըն և շրջականները այսպէս կը փրկուին Աւշար բռնակալութենէն և մինչև 1895-1896 թուականները խաղաղ կեանք մը կը վայելեն (Թորոս Մատաղճեան, Յարգանք Տասնամեակին, էջ 18-19)։

**Յովհաննէս վրդ. Բարաղամեան Թոմարզացի**, ո՛չ իր պաշտօնավարութեան տեւողութիւնը և ո՛չ ալ իր գործերը գիտենք։ Տրդատ եպ. Պալեան և Թորոս Մատաղճեան հաւասարապէս կը յիշեն զինքը առանց ոեւէ տեղեկութեան։

**Կարապետ վրդ. Շահինեան Կէմիրցի** (...— 1887) Այս վարդապետը վանքը չէնցուցած է։ Կը պատմուի թէ 1887 Սեպտ.ին անհրաման կը մեկնի Երուսաղէմ։

**Կարապետ վրդ. Նազարեան Թոմարզացի** (1887-1897) Կը յաջորդէ Շահինեանի և կը պաշտօնավարէ մինչև իր մահը։ Իր օրով վանքին միաբան էր նաև Դաւիթ վրդ. (Մասիս, թ. 3848)։

**Յովհաննէս վրդ. Վահրատեան** (1897-1899) Կարապետ վրդ. Նազարեան երբ կը վախճանի (Փունջ, թ. 2540) կը յաջորդէ անոր իբր վանահայր։ Բնիկ տեղացի, որ ծնած էր 1838 Սեպտ.ին, աշխարհական անունով Յովսէփ, և զաւակ՝ Տ. Թորոս քահանայի։ Իր ուսումը կ'ստանայ նախ Թոմարզա և ապա Ս. Կարապետ, և 27 Օգոստ. 1878ին կը ձեռնադրուի վարդապետ Սանտալճեան եպիսկոպոսէ, Թոմարզայի վանքին իբր միաբան։ Հոն ինն տարի լուսարարութիւն և երկու տարի (1897-1899) տեսչութիւն ընելէ յետոյ կ'երթայ Ս. Կարապետի վանքը։ Հոն վանահայրութեան միամեայ պաշտօնավարութենէ մը վերջ կը դառնայ Թոմարզա ուր կը մնայ անպաշտօն։ Այս եկեղեցականը ինչպէս կ'ըսեն գրող-բրոց մըն էր և ունէր հեղինակութիւններ, ինչպէս Եօթնօրեայ Քարոզգիրք, Նաեւ տասն պատգամաց հին եւ նոր Կտակարանի, Մեկնութիւն Ս. Պատարագի, Պաշտպանութիւն Հայաստանեայց Ուղղափառ Եկեղեցւոյ, Պատմութիւն Վարդանի (գաւառիկ լեզուով) և Աւանդավէպ մը (3 հատոր)։

1915ին չնայելով իր յառաջացած տարիքին, կ'ամբաստանեն զինքը իբր յեղափոխական և ժողովուրդը գրգռող և կը բանտարկեն։



Պատերազմական ատեանի վճիռով աքսոր կ'արձակուի 180 Թոմարզացիներու հետ և կ'աքսորուի Հալէպի ուղղութեամբ։ Կը նահատակուի Մուսուլի կողմերը։

**Կարապետ Ծ.վրդ. Հազարճահեան Թոմարզացի** (1899-1915) վերջին տեսուչ Ս. Աստուածածին վանքին։ Ծնած է 10 Հոկտ. 1868ին, աշխարհական անունով Յակոբ, իր ուսումը առած է ծննդավայրին մէջ։ 3 Հոկտ. 1899ին կը ձեռնադրուի վարդապետ Տրդատ եպ. Պալեանէ որ հազիւ քառասունքը աւարտած զայն կ'անուանէ 25 Նոյեմ. 1899ին Տեսուչ Թոմարզայի վանքին։ Մինչև 1915 կը վարէ այս պաշտօնը։ Տարագրուած և վախճանած է Միջագետքի անապատներուն մէջ։ Իրեն հետ բախտակից եղած է տարագրութեան մէջ վանքին բազմամեայ լուսարար Դանիէլ արքեղայ Բազումեան, նոյնպէս Թոմարզացի, ծնած 11 Սեպտ. 1858ին, աշխարհական անուամբ Բազում-Ենոք Ճաֆճաֆեան, աշակերտ Թոմարզայի Սահակեան և Ս. Աստուածածնայ վանքին ժառ. վարժարանին։




ԹՈՄԱՐԶԱՅԻ ՎԱՆՔԻՆ ՄԻԱԲԱՆՆԵՐՈՒ ՄԷԿ ԽՄԲԱՆԿԱՐԸ

1. ԳԷՈՐԳ ՎՐԴ. ՊՕՅԱՃԵԱՆ,
2. ԴԱՆԻԷԼ ՎՐԴ. ԲԱԶՈՒՄԵԱՆ,
3. ՅԱԿՈԲ ՍՐԿ. ՀԱԶԱՐՃԱՀԵԱՆ ԿԱՄ ԱՌԱՔԵԼԵԱՆ (ՅԵՏՈՅ ԿԱՐԱՊԵՏ ՎՐԴ.),
4. ՍԱՐԳԻՍ ՍՏԵՓԱՆԵԱՆ ԹԱԼԱՍՑԻ ՈՐ ՅԵՏՈՅ ՔՀ. ԵՂԱԾ Է։

Դանիէլ վրդ. Բազումեան իրեն հայրենակից Գէորգ վրդ. Պօյաճեանի հետ (վերջին տեսուչ Ս. Դանիէլի վանքին — տես անդ) 6 Հոկտ. 1885ին ձեռնադրուած էր և հաւատարմութեամբ ծառայած՝ վանքին։

Դարաւոր հաստատութեան երեք վերջին աւանդապահ վարդապետները հեռացուելէ յետոյ, վանքին հարստութեանց մեծ մասը չորթեց Գայմագամ Սալիհ Զէքի, Տէր-Զօրի ջարդին կազմակերպիչը, մնացեալն ալ՝ Էվէրէկի փոխ-կառավարիչ Սէզայի որ յետոյ Ինճէ-Սուի Գատը դարձաւ։ 1914ի տեղահանութենէն յետոյ վանքը բոլորովին անշքացած ու ամայացած է թրքական բարբարոսութեան զոհ երթալով։ Իսկ զինադադարէն յետոյ, ինչպէս կը տեսնուի փորձ մը եղած է տէր դառնալու այս վանքին, որ սակայն չենք գիտեր թէ այսօր ի՞նչ եղած է։

1920 Յունուար 18ին Կեսարիոյ Առ. Տեղ. Տ. Սերովբէ Աքհ. Պուր..

մայեան կը գրէր թէ վանքին Ս. Աստուածածին եկեղեցւոյն խաչկալները բոլորովին քանդուած և պատերուն յախճապակիները քակուած են։ Տաճարին պատերուն և ձեղուններուն վրայ դրուագուած գեղեցիկ պատկերներն ու նկարները, ինչպէս տաճարին յիշատակարանները քանդուած են։ Բակին շուրջը գտնուած սենեակներուն յատակները ձեղունները ընդհանրապէս խորտակուած են։ Աղօրիք, պարտէզ, այգի աւերուած և ամէն ինչ քանդուած էին։

Պուրմայեան քհ. աշխատած է բռնագրաւող Թուրքերը հարկադրելու՝ թէ՛ Հայոց և թէ՛ վանքին 1919ի հունձքը դարձնելու և 1920ի հունձքը քաղելը Հայոց ձգելու։ Խեղճ Թոմարզացիք հաւատալով այս խոստումներուն հաւատացած են Տ. Հօրը թէ երկու տարիներու վանքին հունձքի բաժինները բաւական պիտի ըլլային վերանորոգելու զայն։ Երազ որ դժբախտաբար չիրականացաւ։

5. Ս. ԽԱԶ ՊԻԶՈՒԻ.— Գագիկաշէն այս վանքը (Վարդան, էջ 105) կը գտնուէր Պիզուի մէջ (այս քաղաքի մասին տես էջ 428–433)։ Հոն թաղած էր իր մարմինը (Մաթ. Ուռհայեցի, 265) Բանիկ, Կիզիստռա բերդին մօտէն հանելով գիշերանց։ Իր տեղը անյայտ է հիմա։ Զանազան ենթադրութիւններ եղած են սակայն ամէնքն ալ երկբայական։

Վանքին շինութիւնը ըստ մատենագրական տուեալներու 1046–1079 թուականներուն միջև պէտք է եղած ըլլայ, իսկ վայրը Արգէոսի արեւելեան կամ հարաւ-արեւմտեան ստորոտը։ 1562ին Սեբաստիոյ մէջ Միքայէլ Սեբաստացի կաթողիկոսին նախագահութեամբ գումարուած ժողովին մասնակցող եկեղեցականներու շարքին կը յիշուի Յովսէփ Արքեպ. «ի Բաղամէն Պիծառու ի Ս. Խաչ վանիցն» (ՀԱ. 1906, էջ 323)։ Նոյնպէս 1663էն առաջ գրուած ձեռագիրի մը (Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 879) և անթուական հատուածի մը (Նոյն, էջ 916) մէջ կը յիշուին Պիզառու Ս. Նշան կամ Ս. Խաչ վանքը, որոնք չեմ գիտեր թէ կապ ունի՞ն այս վանքին հետ։ Եթէ այո՛, այն ատեն այս վանքը մինչև ԺԷ. դարուն կէսերը և թերեւս աւելի յետոյ ալ շէն վանք մըն էր որ անկէ յետոյ անյայտ էր ի շարս շարաթայեալ վանօրէից։

6. Ս. ԹԷՈԴՈՐՈՍԻ ԵՒ Ս. ՄԵՐԿԵՐԻՈՍԻ ՎԱՆՔ.— Կեսարիայէն դէպի արեւելք, կէս ժամու չափ հեռաւորութեամբ, բլրակի մը առջև, տափարակ տեղւոյ մը վրայ կառուցուած էր իբր թէ Ս. Մերկերիոսի վանքը, շատոնց աւերակ։ Տրդատ եպ. (տես Բիւզանդիոն, թ. 3073) կը կարծէ թէ ԺԲ. դարուն և հետեւեալ երկու դարերուն մէջ Կեսարիոյ Առաջնորդները կը նստէին այս վանքը և ԺԷ. դարուն սկիզբները փոխադրուած են Էֆքէրէի Ս. Կարապետի վանքը։

Կեսարիոյ Առաջնորդութեան կեդրոնն ըլլալու սահմանուած վանք մը պէտք էր ըլլար կազմաւորեալ շէն վանք մը ԺԲ. դարուն։ Դժբախտաբար այս իրողութիւնը հաստատող ո՛չ մէկ յիշատակարան կայ և միակ յիշատակարանը որ կը ծառայէր այս վանքին գոյութիւնը հաստատելու հետեւեալն էր. «Գրեցաւ եւ ծաղկեցաւ Աստուածաբուխ սուրբ Աւետարանս Քրիստոսի, ձեռամբ բազմամեղ եւ փցուն անիմաստ եւ յանցաւոր գրչի Գրիգոր քահանայիս ի Տումարծա, որ անուամբ կոչիմ եւ ոչ գործովք: ՈԾԵ (=1206) յաւարտեցաւ Ցունվար ամսոյ Գ. աւր շաբաթ, ի դաւառս Կեսարիոյ Կապադովկեցւոց **ի հռչակաւոր անապատիս սրբոյն Թէոդորոսի եւ սրբոյն Մերկերիոսի, եւ այլ բազմահաւաք սրբութեանց ...»** (տես Հայ



Վանօրայք, էջ 88)։ Սակայն ցաւալի է որ Տրդատ եպ. կարեւոր սխալ մը գործած է յիշատակարանէն չեմ գիտեր ինչպէ՞ս մի քանի բառեր դուրս թողլով, բառեր որոնք նոյն յիշատակարանին մէկ տարբեր արտագրութեան մէջ, նոյնիսկ նոյն հատորին մէջ (էջ 32) և այլուր՝ աւելի խնամեալ ընդօրինակութեան մը մէջ (Ցուցակ Հայերէն Ձեռագրաց ՚ի Թուրքիա, էջ 9), կ'երեւան։

Այս բառերը՝ որոնք դուրս ինկած են «ի հռչակաւոր անապատիս» բառերուն քով գտնուող «**Սրբոյ Կարապետի Յովհաննու, եւ Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային**» բառերն են որոնց պէտք է կցել «**եւ**»ով մը մնացեալ մասը՝ որ էր «**Սրբոյն Թէոդորոսի եւ Սրբոյն Մերկերիոսի եւ այլ**»։ Այնպէս որ կ'անէանայ միակ փաստը Հայկական Ս. Թէոդորոսի և Ս. Մերկերիոսի վանքի մը գոյութեան, 1206ին։ Հաւանական է որ Ս. Թէոդորոս և Ս. Մերկերիոս իբր Կապադովկացի սուրբեր Հայոց կողմէն ալ պատուուած են անոնց անունին Ս. Կարապետի վանքին մէջ և այլուր սեղաններ, մատուռներ և եկեղեցիներ հաստատելով։ Այս մասին աներկբայ փաստեր կու տան մեզի մի քանի ձեռագիրներու յիշատակարանները։ Այսպէս 1478ին Երզնկացի Յովհաննէս անուն գրիչ մը Աւետարան մը կը գրէ «ի գաւառս Կեսարիոյ Կապադովկիացւոց ի հռչակաւոր անապատիս Սրբոյն Գրիգորի Նիւսացոյն ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորի եւ Սրբոյն Յակոբայ Մծբնայ Հայրապետին եւ Սրբոյն Ստեփաննոսի Ուլնեցւոյն եւ Սրբոյն Մերկերիոսի զինւորին եւ այլ բազմահաւաք սրբութեանց»:

1481ին հաւանօրէն նոյն գրիչը՝ Յովհաննէս այս անգամ Նաղաշ մակդիրով զարդարուած, իր Ստեփանոս անուն աշակերտին հետ կը գրէ Ճաշոց գիրք մը «ի գաւառս Կեսարիոյ ի սուրբ ուխտս որ է աթոռ սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ, ընդ հովանեաւ Սբ. Գրիգորի Նիւսացւոյն, եւ **Սբ. Թէոդորոսի զինուորին** եւ Սբ. Յակոբայ Մծբնայ Հայրապետին եւ Ս. Ստեփաննոսի Նախավկային եւ **Մերկերիոսի զինուորին**, եւ այլ բազում **Ս. Նշխարացս եւ մասանցս** որ աստ կան հաւաքեալ»:

Իսկ տեսանք թէ 1552ին, 1610ին և 1621ին գրուած յիշատակարաններու մէջ յիշուած Ս. Մերկերիոսի նուիրուած հաստատութիւնը վանք մը չէր այլ եկեղեցի մը (տես էջ 894)։ Հետեւաբար յեղակարծ կը նկատեմ Տրդատ եպ.ի կարծիքը։

7. Ս. ԲԱՐՍԵՂԻ ՎԱՆՔ.— Կեսարիոյ քաղաքին հարաւային կողմի ծայրի տուներուն հանդիպակաց, գրեթէ չորս կամ հինգ վայրկեան հեռաւորութեամբ գետնի մը վրայ կը գտնուի Ս. Բարսեղի վանքը, որ ի վաղուց աւերակ էր։

Այս վանքին հիմնարկութեան թուականին, ինչպէս նաեւ անոր շէն ու բարգաւաճ շրջանին, և անշքացման ու աւերման ժամանակամիջոցներուն վրայ ո՛չ պատմական և ո՛չ աւանդական տեղեկութիւն մը չկայ։

Յիշատակարանի մը մէջ ալ յիշուած չէ։ Միակ անխօս վկաները հին շէնքի մը ընդարձակ հիմերն ու կիսափուլ կամարներն էին որոնք կը մնային։

Հաւանական է նոյնիսկ խորհիլ թէ այդ վանքն հայկական չէր, քանի որ Կեսարիոյ և շրջակայից Յոյն ժողովուրդը այդ տեղին «Այ-Վասիլի» (= Ս. Բարսեղ) անունը կու տար։ 1621ին յիշուած Ս. Բար-

*սեղ Հայրապետին եկեղեցին (տես վերը, էջ 899) չեմ գիտեր թէ կարելի՞ է նոյնացնել այս վանքին հետ։*

8\. *Ս. ԲԱՐՍԵՂ ՀԱՅՐԱՊԵՏԻ ՎԱՆՔ (ԹԱԼԱՍ).— Ալի-տաղ կամ Այիոս Վասիլիոս եռագագաթ լեռան գրեթէ արգանդին վրայ կը գտնուին վանքի մը աւերակները, ինչպէս նաեւ Հայ գերեզմանատուն մը, որ* «Բարսեղ Հայրապետ» *կը կոչուէր։ Վանքին ե՞րբ շինուած եւ ե՞րբ քայքայուած ըլլալը անծանօթ է։ Աւանդութեամբ կ'ըսուի թէ նախապէս 2-3 վիմափոր սենեակներով ճգնարան մը եղած է։*

*Այս սենեակները, որոնք կը կոչուէին* «Ս. Կարապետի Ճգնարան» *մինչեւ վերջերը կը մնային աւերակներու կոյտերուն ներքեւ եւ հետաքրքիրներ միշտ կը մտնէին փլատակները մէկ կողմ առնել տալով։ Աւանդութեան մը համաձայն Ս. Բարսեղ հայրապետ բնակած եւ ճգնած է՝ այս այրերու մէջ, որոնց քով յետոյ իբր թէ կառուցուած է հոյակապ տաճար մը որ կոչուած է* «Բարսեղ Հայրապետի Վանք»:

*1915ին դեռ հոն կը տեսնուէին փլատակներու կոյտեր եւ կիսականգուն եւ փլչելու վրայ կամար մը, որուն արեւելեան կողմը կ'երեւէր տաճարին սեղանին տեղը, որ բաժնուած էր երկուքի։ Ասոնցմէ մէկը Հայոց եւ միւսը Յունաց կը պատկանէր իսլամներն ալ հոն ունէին* մէանիս *մը ուր ուխտի կ'երթային։*

*Տարին մէկ երկու անգամներ, ամառ ժամանակ, Հայերն ու Յոյները պատարագ կը մատուցանէին, իրենց յատուկ սեղաններուն վրայ, եւ մատաղ պատրաստելով աղքատաց կը բաժնէին։ Ուխտավայր բարձրանալու ճամբան չափազանց ցից ու սեպ ըլլալուն հակառակ՝ շատերը հետիոտն եւ երբեմն ալ բոկոտն կը բարձրանային։*

*Այս վանքին ալ զուտ հայկական նկարագիրը իմ տեսութեամբս կասկածելի է։*

9\. *Ս. ԲԱՐՍԵՂ (Թոմարզա).—* «*Ս. Բարսեղ*» *անուն երրորդ վանքի մըն ալ տեղը ցոյց կը տրուէր Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին արեւելեան կողմը՝ քիչ հեռուն, փոքր լերան մը ստորոտը։ Շրջակայ գիւղացիք միայն աւանդութեամբ կ'ըսեն թէ հոն* «Ս. Բարսեղ» *վանք կար։ Բոլորովին աւերակ էր։ Ոչ մէկ հետք պատմական եւ ժամանակագրական։ Թոմարզացիք եւ շրջակայ Հայ գիւղացիք տարին անգամ մը ուխտի կ'երթային հոն, եւ մատաղներ կ'ընէին ու կը բաժնէին ներկայ ուխտաւոր ժողովուրդին։*

10\. *Ս. ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻԻ ՎԱՆՔ.— Ս. Կարապետի վանքին արեւելեան կողմը, գրեթէ երեք քառորդ ժամ հեռաւորութեամբ, Տարսիախ (=յուն. Տաքսիարխոն) անուն գիւղին մէջ կառուցուած էր Ս. Գրիգոր Նարեկացիի վանքը, որ հին ատեն, թերեւս գիւղը չի կազմուած, չէն էր եւ ունէր կազմաւորեալ միաբանութիւն* (Հայ Վանօրայք, *էջ 75)։ Այս յունաբնակ գիւղին մէջ երբ Հայեր ալ հաստատուեցան եւ շատցան, այս վանքը ձգուեցաւ իբր ծխական եկեղեցի գիւղին եւ դադրեցաւ վանք ըլլալէ։ Երկար տարիներ վերջը եկեղեցին ալ անգործածելի դարձած էր վասնզի Տարսիախ գիւղին մէջ հազիւ 5-6 տուն աղքատիկ Հայեր մնացած էին, որոնք անկարող էին քահանայ մը հոգալու։ Անոնք 10 վարկեան հեռու Նիրզէ գիւղին եկեղեցիէն եւ քահանայէն կ'օգտուէին։ Ս. Գրիգոր Նարեկացիի վանքէն կը մնար միակ վիճակի մէջ Ս. Աստուածածին տաճարը, որուն երկրորդ նորոգութեան առթիւ արեւմտեան դրան ճակատը գրուած արձանագրութիւնն էր հետեւեալը.*

«Յիշատակ է Տարսիախու Սուրբ եկեղեցի, Աւագ խորան Աստուածածնի, Աջամբ Մելքոն Գասպար Պաղտասարի, Անեակն Անդրէասս Առաքելի, Դուշլուխցի օղլու Սարգսի, Կողակցույն Մարիամի որդւոյն Մանեսի, Մելքոնի կողակցույն Մանեսի Նազլուի, Որդին Մանեսի Գրիգորի: Շարժէ քայքայ եղեր եկեղեցի, Ազդ եղեւ ի Կոստանդնուպոլսի, Առ մեծ իշխանազարմի, Որոյ անուն Մանեսի Մելքոն կոչի, Եղեւ պատճառ Նորոգման այս Սուրբ եկեղեցի, Յիշատակն օրհնութեամբ եղիցի. Ով հանդիպի այս մատուռի, միով հայր մեղայիւ յիշեսցի սորա հոգի, հիմնեալ եղեւ ՌՃԿ (=1711) թուականի, Յուլիս ամսոյ տասն եւ մէկի»:

*Այս արձանագրութենէն որոշ կ'երեւայ թէ 1711էն բաւական առաջ արդէն վանքը այլեւս դադրած էր գոյութիւն ունենալէ եւ ծխական եկեղեցի դարձած։ Այս վանքն կը նոյնացնեմ Տարսիախի Ս. Անդրէաս եկեղեցիին հետ, որ Ինճիճեան կը յիշէր (տես էջ 803)։*

*Այս անունը աւելի հաւանական է որ ունեցած ըլլայ ան, քանի որ անիկա ունէր Անդրէաս Առաքեալի նուիրուած խորան մը։ Իսկ Գր. Նարեկացիի վանք ո՛չ մէկ տեղ յիշուած է։*

11\. *Ս. ԳՐԻԳՈՐ ՆԻՒՍԱՑԻԻ ՎԱՆՔ.— Ս. Կարապետի վանքին արեւելեան կողմը՝ մէկ ժամ հեռու եւ Տարսիախ գիւղէն 10-15 վայրկեան անդին, Նիրզէ գիւղին արեւելեան ծայրը կը գտնուի այս վանքը, որ մօտաւորապէս հարիւր տարիներէ ի վեր գրեթէ ամայի եւ աւերակ էր։ 1910ին տակաւին կանգուն կը մնային վանքին արտաքին պարիսպը եւ եկեղեցին, որ շատ փոքրիկ ու գրեթէ մատուռի մը ձեւն ունէր։ Պարիսպը* «այն տեսակ շինուածք մըն է որ նորկայիս չէ կարելի այդպիսի շէնք մը շինել, բոլոր քարեր անտաշ՝ ամէն մէկը ապառաժներէ, պարիսպի բարձրութիւնը մօտաւորապէս 15 մեթր էր» (*Սենեքերիմ Խրտըրեան,* Համառօտ պատմութիւն Կեսարիոյ Նիրզէ գիւղին, 1918, *էջ 26) այնպէս որ* «իր շինութեան նայելով քանի մը հազար!! տարուան կեանք» *անոնք ունեցած են կը կարծէ Ս. Խտըրեան (Նոյն) ինչ որ հաւանական չէ։* «Վանքին մէջ կայ 40-50 հոգի առնելու չափ սեղանատուն մը ուր ամառ ընդհանրապէս բարեպաշտ տիկիններ եւ օրիորդներ կ'երթան հին վանքին հին Աստուծոյ աղօթելու շաբաթ երեկոյներ» (*Նոյն*)։

«Վանքին մէջ կայ նաեւ քարայր մը (հն), 5-17 ոտք կրնաս քալել մէջը, շատ վարպետութեամբ շինուած մըն է: Եթէ պահուելու պէտք ըլլայ ջուրը եւ այլ ամէն ինչ կայ, բայց դժբախտաբար ոչ մէկ թուական կը կրէ, որպէսզի գիտնայինք թէ քանի հազար տարուայ շինութիւն է. քարայրներու մէջէն երբեմն խաչեր եւ ուրիշ եկեղեցական անօթներ գտնուած են» (*Նոյն*, 26), *ինչ որ ինքնին ցոյց կու տայ թէ Ս. Կարապետի ստորերկեայ մասին պէս քրիստոնէական առաջին դարերու յատուկ ճգնարան կամ գաղտնի աղօթարան մըն էր։ Վանքին արեւմտեան կողմի պարիսպին տակէն դուրս ջուր մը կը բխի մեծ քանակութեամբ, որուն բուն իսկ ակը վանքին տակն է, ուր կ'իջնէին վանքին մէջէն 15-20 աստիճան քարաշէն սանդուխներով*

*Ասիկա ակն է* Նէրզէ Սու *ըսուած գետակին, որ կրնար ջաղացք մը դարձնել, մինչ Սիմէոն Լեհացի անոր կու տայ 10 ջաղացք դարձնելու ուժ* (ՀԱ. 1935 *էջ 93)՝ կը կոչէ* «Մեծ Գետ» *որ* «զամենայն դաշտն ոռոգէ»:

Այս ջուրը կապոյտ է, ամառը սաստիկ պաղ է իսկ ձմեռը տաք, այնպէս որ շոգի կը բարձրանայ (Ս. Խտըրեան, նոյն 26)։ Ձմեռը կիները լուացքի կ'երթան Ս. Գրիգորի ջուրը։ Աւանդութիւն մը այս վանքին կործանումը կը զօդէ այս ջուրին կապուած պատմութեան մը։ Իբր թէ կին մը իր 4-5 տարեկան տղուն հետ հոն լուացք ընելու կ'երթայ։ Տղան կը մսի կամ կը ձանձրանայ և կ'սկսի լալ։ Վանահայրը որ վերէն կը դիտէր, խնձոր մը կը նետէ որպէսզի երախան ձայնը կտրէ։ Վանահօր այս արարքը չարամիտ մեկնութեանց առարկայ կ'ըլլայ, հոն գտնուող ուրիշ կիներու կողմէ և գիւղին մէջ արձագանգ կը գտնէ ու վանահայրը բռնի կը վանուի։ Վարդապետը անիծելով կը մեկնի և այն օրէն ասդին վանքը կը դառնայ անբնակ (Սենեքերիմ Խտըրեան, նոյն էջ 27)։

Այս վանքին հիմնարկութեան թուականն ալ ծանօթ չէ, սակայն անիկա ԺԴ. դարէն առաջ արդէն գոյութիւն ունեցած պիտի ըլլայ, վասնզի 1206ին Թոմարզայի Տ. Դրիգորի ձեռամբ՝ Ս. Կարապետի վանքին մէջ գրուած Աւետարանը նուիրուած է այս վանքին։ Յիշատակարան «յիշեցէք կ'ըսէ ի մաքրափայլ յաղաւթս ձեր զծառայսին որ ստացաւ զՍր. Աւետարանս եւ յետ յիշատակ **ի վանս սրբոյն Գրի(գ)որի Նիւսացւոյն** որ է եղբայր Սրբոյն Բարսեղայ:

Ուրեմն ԺԳ. դարուն սկիզբը և շատ հաւանօրէն ԺԲ. դարուն այս վանքն գոյութիւն ունէր, և այս կողմերու հնագոյն վանքերէն մին էր, գրեթէ ժամանակակից Ս. Կարապետի, որուն պէս թերեւս ինքն ալ յունական ծագում ունէր, քանի որ հոն էր ըստ Սիմէոն Լեհացիի «մարմին Ս. Գրիգորի Նիւսացւոյ, եղբօր մեծին Բարսեղի ... անդ կայր եւանեւոյն մարմինն թաղեալ ի դուռն եկեղեցւոյ» (ՀԱ. 1935, էջ 93)։

Աւանդութիւն՝ որ մինչեւ վերջը պահուած էր, վասնզի վանքին առջեւ կային շատ մը գերեզմաններ, և կ'ըսուէր թէ Գրիգոր Նիւսացիի գերեզմանն ալ հոն էր (Ս. Խտըրեան, նոյն 27)։

Անշուշտ Օրթոտոքս եկեղեցիին հռչակաւոր Սուրբին մարմինը պարունակող վանքը նախապէս պէտք էր նոյն եկեղեցիին պատկանած ըլլար, և ինչպէս Ս.Կարապետի՝ նոյնպէս այս վանքին ոեւէ ձեւով մը Հայք տիրացած ըլլային, ապահովաբար իսլամներու իշխանութեան շրջանին։

ԺԻ. դարէն յետոյ անիկա սեփական մնացած է Հայոց, ինչպէս կը հաստատեն յիշատակարաններ և արձանագրութիւններ։ Այսպէս Յ. Վ. Յակոբեան (Բիւրակն, 1899, 602) վանքին աւերակներուն մէջ գտած է դուռ մը որուն վրայ կար ՉԽԴ. (=1295) թուականով արձանագրութիւն մը և հոն գրուած էին երկու հատ 1478ին, ինչպէս նաև 1481ին, 1484ին և 1491ին ընտիր ձեռագիրներ, որոնք ցոյց կու տան թէ վանքը եղած է մտաւորական վառարան մը։

Ինչպէս արդէն տեսնուեցաւ (էջ 968 և 971) անիկա հաւանօրէն ԺԶ. և ԺԷ. դարերու եղած է աթոռը քորեպիսկոպոսի՝ մը ենթակայ Կեսարիոյ Արքեպիսկոպոսին։

Իր վանահայրերէն միայն ծանօթ են երկու իրարու յաջորդող հետեւեալները։

**Կարապետ եպ.** (....–1761†). Հիճրէթի 1177 (=1762 Քր.ի) թուականը կրող հրովարտակէ մը — որ Ս. Կարապետի վանքը պահուածէր — կը հասկցուէր թէ տարի մը առաջ վախճանած էր այս եպիսկոպոսը, որուն մասին ուրիշ տեղեկութիւն չունինք (Հայ Վանօրայք, 77)։



**Կարապետ վրդ. Զմշկածագցի** (1762–....) կը յաջորդէ անոր ըստ նոյն հրովարտակին։ Այս թուականէն յետոյ արդէն վանքը կը թուի թէ անշքացած է։

Մինչև վերջը կը մնար վանքին եկեղեցիին սեղանին վրայ պատկեր մը, մէկ կողմը Ս. Աստուածածին, միւս կողմը Ս. Գրիգոր Նիւսացին նկարուած, բաւականին գեղեցիկ գործ մը, հետեւեալ յիշատակարանով, «Սբ. Գր. Նիւսացին, Հայցակատար Սբ. Ածծին. Կոյս»։

Յիշատակ է, Էճֆարացի, Արապ Օղլի, Մահտեսի Սիկէնտէրի որդի Մահտեսի Մովսէսին, Նիրզէ վանքն, Սբ. Գրիգորի Ածաբանին, թուի ՌՄԻԱ (=1772) որ է Ապրիլ Է, Զատիկ եւ օր Յարութեան Քրիստոսի Այ. մերոյ:

Վանքը ունի իր դրան առաջ բաւական տարածութեամբ հող (Ս. Խտըրեան նոյն, 27)։ Իր մէջ կայ գեղեցիկ պարտէզ մը, ուր գիւղին քահանան իրաւունք ունի վարուցան ընելու (նոյն)։ Վանքին արտաքին երկաթեայ միակ դրան բանալին յանձնուած էր Նիրզէի քահանային, որ երբեմն ուխտաւորներուն կը բանար զայն։

12. Ս. ՊԱՐՍԱՄԻ ՎԱՆՔ.— Պալակէսիի քով ձորակին հիւսիսային լեռնադաշտին և Խաչ լերան հարաւ-արեւելեան կողմը կը գտնուէր վայրը Ս. Պարսամի աւերակ վանքին, որուն շրջապարիսպէն և ներքին հիմերէն ալ բաւական մասեր կ'երեւէին։ 1886ին Վտարանդին դեռ տեսած է «եկեղեցին, աւազանը և սենեակները» (Մասիս, 3848)։

Այս վանքին հիմնարկութեան ժամանակը անյայտ է։ Կը կարծուի թէ երբեմն ընդարձակ և շէն վանք մըն էր։ Տրդատ եպ. կը կարծէ թէ վաղուց չարաթացեալ էր մինչ Վտարանդին կ'ըսէ թէ զայն քանդած են Ենիչէրիները ԺԸ. դարուն վերջերը։

Վանքին տեղը ուխտատեղի մը եղած էր ուր մանաւանդ Պալակէսէցիք Համբարձման տօնին կ'երթային և մատաղ կ'ընէին։

Ո՛չ մատենագրական և ո՛չ արձանագրական ուրիշ տեղեկութիւն մը կայ այս վանքին վրայ։

13.— Ս. ԱՂՕԹԻԿԻ ՎԱՆՔ.— Նոյնպէս Պալակէսիի հարաւային կողմը, կէս ժամու չափ հեռու «Աւետիք» կամ «Աղօթիկ» ըսուած մեծ և ընդարձակ, և բնականէն գեղեցկադիր ձորին հիւսիսային կողին վրայ շինուած է եղեր այս վանքը, որուն ինչպէս հիմնարկութեան թուականը, նոյնպէս ամայացման ժամանակը յայտնի չեն։ Վաղուց կը թուի չարաթացեալ։

Կը մնային իբր մնացորդ շինութեան մը՝ վանքին պարիսպները, եկեղեցիին և ներքին շէնքերուն հիմերը, հին և մեծամեծ քարերով։ «Աւետիք» կամ «Աղօթիկ» ձորին մէկ կողմը հին գիւղի մը աւերակները կային, և ձորին մէջ ալ տեղ տեղ վիմափոր բայց զարմանալի այրեր կը գտնուէին, բաւական լայն և շատ երկար։ Նոյնպէս կը տեսնուէին փլատակները քանի մը եկեղեցիներու որոնցմէ մէկուն, Պալակէսիի և մօտակայ գիւղերու Հայերը «Ճգնարան» անունը կու տային։ Այս եկեղեցիին արեւմտեան պատը և դուռը կանգուն կը մնային մինչև վերջերը։

Ասոնց մօտ կը գտնուէր լայնատարած հաստատուն ապառաժ քար մը, որուն մէկ երեսին վրայ փորագրուած էին զանազան նշանագիրներ, որոնց իմաստը և ի՞նչ լեզուի պատկանիլը անծանօթ կը մնան։

*Առաջին մասը՝*



Իսկ ճգնարանին դրան ձախակողմը մէկուկէս կանգուն բարձրութեան վրայ, պատին մէջ փորուած գերեզման մը կար, մէկ կանգուն լայնութեամբ և երկուքուկէս կանգուն երկայնութեամբ, և երեք քառորդ կանգուն ալ խորութեամբ, բայց մէջը պարապ։ Ջորին միւս կողմն ալ, դատարկ գերեզմաններու տեղեր կ'երեւային։

Թէ՛ այս գերեզմաններուն և թէ՛ ճգնարանին մօտ գտնուած գերեզմանին մէջ ըստ Պալեան եպ.ի տեղեկութեան մարդկային աճիւններ կան եղեր այրած ու փոշիացած, բայց գիւղացի ռամիկ ժողովրդեան տղաքը ոչնչացուցած են։ Հոն գտնուած գերեզմանի մը կափարիչ քարին վրայ հետեւեալ նշանագիրները կային, որ նոյնպէս Տրդատ եպ. Պալեան ընդօրինակած էր (տես Հայ Վանօրայք, էջ 81)։

*Երկրորդ մասը՝*



ԱՊԱՌԱԺԻՆ ՎՐԱՅ ՓՈՐԱԳՐՈՒԱԾ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ



Այս հնութիւնները որոնք չեն ուսումնասիրուած, հաւանօրէն Նախաքրիստոնէական շրջանի պատկանելու չափ հին են։



Վանքին տեղւոյն վարի կողմը ինքնաբուխ ջուր մը կար, որ փոսի մը մէջէն դուրս կու գայ առանց վազելու և առանց հատնելու, որչափ որ ալ առնուի ջուրէն և կամ խմուի։ Այս ջուրը, մօտակայ Հայ, Յոյն և Թուրք գիւղացի ժողովրդեան կողմէն կը կոչուէր Հայաք կամ Խօմիւր Ասույու։

14. ՀԱՅՐ ԱԲՐԱՀԱՄԻ ՎԱՆՔ.— Թոմարզայի արեւելեան կողմը մէկ ժամ հեռու, դաշտի մը վրայ, երբեմն Գիրզովր անուն գիւղին մէջ, կայ եղեր վանք մը յանուն «Հայր Աբրահամի»։ Ինչպէս գիւղը նոյնպէս վանքը Հայք լքած էին, վերջերը միայն հիմերը կ'երեւէին։ Թոմարզայի և շրջակայ Հայ գիւղերու բնակիչները տարին անգամ մը ուխտի կ'երթային այս վանքին տեղը և մատաղ կ'ընէին և կը բաժնէին ներկայ ուխտաւոր ժողովուրդին։

15. Ս. ՅԱԿՈԲ.— Մատենագրական տեղեկութեան մը համաձայն Կեսարիոյ մէջ գոյութիւն ունեցած է նաև Ս. Յակոբի վանք մը(1)։ Աղբիւրը դժբախտաբար ինծի անծանօթ է։ Թալասի մէջ կար նոյն անունով ուխտատեղի մը որ Տրդատ եպ. կը նոյնացնէ այս վանքին հետ (Հայ Վանօրայք, 98), որուն գոյութիւնն իսկ կասկածելի կը թուի ինծի։

16. Ս. ՄԻՆԱՍ.— Թալասի Բարսեղ Հայրապետի կամ Ալի Տաղ լերան ստորոտը կը գտնուէր Ս. Մինաս անունով ուխտատեղի մը, որուն համար աւանդաբար կ'ըսուէր թէ ժամանակին վանք մըն էր, վիմափոր սենեակներով։ Արդարև հոն կը գտնուէին երկու վիմափոր սենեակներ ու փոքրիկ դիրքով մատուռ մը, ուր յաճախ կը դիմէին, Թալասի և մօտակայ Հայ գիւղերու ժողովուրդը։

17. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔ.— Կեսարիոյ հարաւային կողմը, բուն իսկ քաղաքին ծայրէն գրեթէ հինգ վայրկեան հեռու Հայոց գերեզմանատան մօտիկը, անյիշատակ ժամանակներէ ի վեր, աւերակ ու ամայի վայր մը իբր վանատեղի ցոյց կու տային։ Ժողովրդական աւանդութենէ միայն ծանօթ էր թէ նոյն տեղը յիշեալ անունով վանք մը եղած էր։ Այս աւանդութիւնը պահուած էր նաև դրացի Յոյն ժողովրդեան քով։ Ուստի այս տեղւոյն սեփականութեան վրայ երկու Քրիստոնեայ ազգերու միջև խնդիր կար երկար ատեն (Տրդատ եպ. Պալեան, Բիւզանդիոն, թ. 1360)։

Այդ տեղեկութիւնները կը պատշաճին կարծես թէ Ս. Մերկերիոսի եկեղեցւոյն տեղւոյն համար Սիմէոն դպիր Լեհացիի տուած բացատրութեանց (տես վերը, 894)։

18. Ս. ԳէՈՐԳԱՅ ՎԱՆՔ.— «Կեսարիայէն երկու ու կէս ժամ հեռի, դէպի արեւմտեան հիւսիս, Էրքիլէթ անուն գիւղի լեռնաբլուրին վրայ շինուած է Ս. Գէորգայ վանքը։ Շինութեան թուականը անծա-

(1) Տես Պատմութիւն Հայերէն Դպրութեան Բ. Նոր մատենագրութիւն, Վենետիկ, 1905, էջ 192. ընդհանուր վանքերու ցուցակի մը մէջ Կեսարիոյ Ս. Գր. Նիւսացիի (էջ 189), Ս. Կարապետի (էջ 190), Ս. Սարգիսի (էջ 193) վանքերուն հետ յիշուած է նաև այս վանքը։ Զարբանէլեան վրդ. այս ցուցակին մէջ Կեսարիոյ բառին տեղ Մաժակ կը գործածէ։ Ասկէ հետեւցնելով Տրդատ եպ. վրէպով մը Մաժակի մէջ կը փնտռէ այս վանքը, ինչ որ բնաւ հաւանական չէ։

նօթ է։ Շէնքն որ զարդերով քանդակուած և մեծամեծ քարերով շինուած է, երբեմնի մասերը ամբողջ կը մնան իբրև մեծ հնութիւն, եւրոպացի այցելուներու զարմանք ազդելու չափ։ Այժմ ամայի, և սեփականութիւնն ալ անցած է Յունաց, որոնք կը կոչեն Այիօս Թըրտէլլէսի վանք» (Տրդատ եպ., Պալեան, Բիւզանդիոն, թ. 1360)։

Ուրիշ տեղեկութիւն մը չունիմ դժբախտաբար։

19. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ.— Այս վանքը կը գտնուէր Էվէրէկի մօտ Իլիպէ գիւղին Ս. Աստուածածին եկեղեցւոյն տեղը, ժայռի մը մէջ վիմափոր շինուած։ Փոքրիկ վանք մըն էր որ յետոյ քանդուած և ուխտատեղի եղած էր (Տրդատ եպ. Պալեան, Բիւզանդիոն, թ. 1360)։ Երբ Հաճընէն 30 ընտանիքներ հոն կուգան կը հաստատուին և Իլիպէ գիւղը կը հիմնեն, այս վանքին մնացորդները կը վերածեն եկեղեցիի։

20. Ս. ԿԱՐԱՊԵՏ ԿՈՄԱՆԱՑԻ. — Ազիզիյէի անմիջական վերեւը գտնուող հովտին մէջ, որ պարսպուած էր մեծ բարձրութեամբ մը շինուած է եղեր այս վանքը որ կը կոչուէր «Ս. Կարապետի վանք Կոմանայի», վասնզի հոն կը պահուէր Սուրբին նշխարներէն մաս մը։ Շատ հին ժամանակներէ ի վեր հովտին մեծ պարիսպը ինկած և վանքը դադրած էր շէն ըլլալէ։ Պալեան եպ. կ'ըսէ թէ «Նորինօրոյ եղած պեղումներէն, հովտին մէջ ի յայտ կու գան վանքի եւ եկեղեցւոյ մը հիմեր եւ կը տեսնուին կոփածոյ սեւորակ քարեր, մարմարեայ սիւներ, որք կը հաստատեն աւանդութիւնը, եւ վանքի մը գոյութիւնը» (Բիւզանդիոն, թ. 1327. և Հայ Վանօրայք, էջ 123–124)։ Աւելի տեղեկութիւն մը չունիմ դժբախտաբար:

21. ԱՆԱՆՈՒՆ. — Տրդատ եպ. Պալեան Էքրէքի գերեզմանատան մէջ գտնուած շինութեան բեկորները կը կարծէ թէ վանքի մը մնացորդներն են, վասնզի անոնք կը յիշեցնեն վանք մը, իր չուրջը եղած պարսպին դիրքով,, և իր մէջ ունեցած մեծամեծ քարերով և գերեզմանաքարերով, մանաւանդ մատրաձև բայց աւեր գերեզմանով մը, որուն շինութեան ձեւն ամէն հնութիւն ու գեղարուեստ ունի իր վրայ (Հայ Վանօրայք, էջ 126)։

Այս պատճառով Տրդատ եպ. տարուած է մտածել թէ անիկա Պիզուի Ս. Խաչ վանքը կրնայ ըլլալ, սակայն իր փաստերը անժխտելի չեն։ Հաւանական է որ այս վանքին վայրը հեթանոսական շրջանէ շէն մըն էր, վասնզի 1890ական թուականներուն իբր թանկագին հնութիւն Կ. Պոլիս փոխադրուած է հետեւեալ արձանագրութիւնը (Հայ Վանօրայք, էջ 127)։









Այս քարին վրայ տեսնուած խաչերը, ըստ Պալեան եպ.ի, կ'երեւի վերջէն քանդակուած էին և քարն ալ դրուած էր Հայու մը գերեզմանին վրայ։

Տրդատ եպ. Պալեան Էքրէքի այդ հնօրեայ գերեզմանատան մէջ գտնուած քանի մը հին խաչքարերու հետեւեալ արձանագրութիւնները, որոնք մասամբ միայն կը կարդայուէին, ընդօրինակած է։

—«Ի թուակի, ԷՃ ու ԻԴ. կանգնեցաւ Սբ. Նշան Հայոցին ի բարեխաւս....» (724+551 =1275):

—«Խաչատուր, ի թո...ի ԷԾԵ. կանկնեցաւ Սբ. Նշանս ի բարեխաւսութիւն տեաւ ի կնաս ... սէրեց որ զՍբ. Նշանս կանգնեց. Քս. Ած. ողորմի» (755+551=1308):

—«Ի թուի ՊԽԱ. կանկ[նեցաւ] Սբ. Նշանս ի բարեխաւս... Ոի ...» (841+551=1392):

Այս վիմագրական արձանագրութեանց պատկառելի հնութիւնը նկատի առնելով, կրնանք վստահօրէն հետեւցնել թէ Էքրէքի այդ գերեզմանատունը և անոր մէջ տեսնուած շէնքը, շատ հաւանօրէն ԺԱ., ԺԲ. և ԺԴ. դարերուն շէն վանք մըն էր, քանի որ այս արձանագրութիւնները տապանագիրներու բովանդակութիւնը չունին այլ աւելի խաչքարերու, և գիտէք որ խաչքարերը կը կանգնուէին յաճախ եկեղեցիներու շինութեան կամ անոնց պայծառութեան սատարողներու անունով։ Հետեւաբար հոն կրնանք ենթադրել հին վանքի մը գոյութիւնը, սակայն մինչև դրական փաստի մը յայտնութիւնը պիտի վարանինք Պիզուի վանքին հետ նոյնացնել։

22. ԽՆՁՈՐԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ.— Սըվգըն գիւղին մէջ էր Խնձորի վանքը, ըստ աւանդութեան։ Ե՞րբ հիմնուած և ո՞րքան ատեն շէն եղած ըլլալը յայտնի չէ։ Միայն 1562ին ձեռագիր Շարականի մը յիշատակարանէն կը տեղեկանանք թէ 1562ին տակաւին շէն էր և եպիսկոպոս վանահայր մը ունէր (թ. 1612, Ջեռագիր Էջմիածինի)։

Անոր վայրը ցոյց կու տային։ Հոն կը տեսնուէին շրջապատ մը և հիմեր որոնք մինչև Ի. դարուն սկիզբները կը մնային։ Այդ թուականներուն գիւղացիք քարերը հանելով գործածած են ուրիշ շինութեանց (Տրդատ եպ. Պալեան, Հայ Վանօրայք, 124)։

Այս վանքին վանահայրերէն ծանօթ է միայն **Տ. Յակոբ եպ.** որ 1562ին կը պաշտօնավարէր հոն։

23.— Ս. ԿՈՅՍ ՄԱՐԻԱՄԻ ՎԱՆՔ.— Սըվգըն գիւղէն մէկուկէս ժամ հեռու, դէպի հարաւ, բարձր դիրքին մը վրայ շինուած, Բանլը անուն թրքաբնակ գիւղին վերեւը կը գտնուէր «Ս. Կոյս Մարիամի» ուխտատեղին, որուն համար Հայ գիւղացիք, աւանդութեամբ կ'ըսէին թէ «Ս. Կոյս Մարիամու վանք»ն է և տեղն ալ ցոյց կու տային, և կանոնաւորապէս ալ միշտ ուխտի կ'երթային։ Հոն կար «Ս. Կոյս Մարիամի» անուն աղբիւր մը, որուն ջուրէն կ'օգտուէին ուխտաւորք։ Ուրիշ ծանօթութիւն մը չունիմ։

24. Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔ.— Նիյտէի մէկ ծայրը կը գտնուէր այս վանքը։ Դիրքով փոքրիկ, ողջ մատուռ մը միայն կը մնար այս վանքէն, որ ուխտատեղի եղած էր երկար տարիներէ ի վեր։ Տարին անգամ մը, Նիյտէի քահանան, կ'երթար այդ տեղը, մատուռը և չուրջը մաքրել կու տար, պատարագ կը մատուցանէր, հոգեհանգիստ կը կա-

տարէր, իսկ ժողովուրդն ալ իր ուխտը։ Այս վանքին տեղն ալ հեթանոսական շրջանէն շինութեան մը վայրը ըլլալ կը թուի, վասնզի անոր մուտքը գտնուած է հետեւեալ արձանագրութեամբ քարը (հիմա Կ. Պոլսոյ թանգարանը) (Հայ Կաճorայf, էջ 199)։



Բ.

## ՀԱՅ-ՀՌՈՄ ՀԱՄԱՅՆՔ

Կեսարիոյ և շրջակայից մէջ վաղուց գոյութիւն ունեցած է Օրթոտոքս դաւանութեան յարող Հայերու բազմութիւն մը, որ Յոյները կը կոչէին Արմէնեակներ, իսկ Հայերը՝ Հայ-Հոռոմներ։ Անոնց շատերը մոռցած նոյնիսկ իրենց Հայ ծագումը, բոլորովին յունացեր էին, իսկ փոքր մաս մը կը յիշէր իր ազգութիւնը երբ երկիրը Իսլամ տիրապետութեան ենթարկուեցաւ (տես վերը, էջ 541–544)։ Հակառակ անոր որ Օսմ. տիրապետութեան տակ անոնք իրենց ազգութիւնը պահպանելու պատեհութիւնը ունէին, բոլորովին անհետացան։ Իրարու յաջորդող աղէտները և խռովութիւնները, մանաւանդ Ճէլալիներու ասպատակութիւնը, որուն միջոցին Կեսարիա գրեթէ դատարկուեցաւ և իր բնակչութիւնը աստ անդ ցրուեցաւ, թերեւս պատճառ եղան որ անոնք հեռանան, կամ Օրթոտոքս եկեղեցին ժամանակի ընթացքին յաջողեցաւ զանոնք բոլորովին յունացնել։ Այնպէս որ Օսմ. տիրապետութեան շրջանին գրեթէ այս տարրին յիշատակութեան չենք հանդիպիր, բացի միակ պարագայէ մը։

Դարանաղցի (էջ 488-9) ժէ. դարուն կէսէն առաջ կը պատմէ խաչագող, խաբեբայ և չարաչահ Հայ-Հոռոմ Կեսարացի կնոջ մը պարագան, որ իրեն դիմում կ'ընէ իբր թէ Հայ դառնալու համար։ Եթէ արդարև այս կինը Կեսարացի էր, այն ատեն կը հաստատուի թէ տակաւին մինչև ժէ. դար, Կեսարիոյ մէջ կ'ապրէին Հայ-Հոռոմներ, որոնց այլեւս չենք հանդիպիր ո՛չ Կեսարիոյ և ո՛չ ալ շրջակայից մէջ աւելի ուշ ժամանակներու։ Սակայն կրօնական պառակտումը չի վերնար Հայոց մէջ, ուր առաջ կու գան ուրիշ երկու հատուածներ՝ դաւանաբանական, խանգարող Հայ Եկեղեցւոյ միութիւնը, և առիթ ու պատճառ՝ անօգուտ պայքարներու։



Գ.

## ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿ ՀԱՄԱՅՆՔ

Ամէն քիչ շատ իր ազգին և Եկեղեցիին պատմութեան ծանօթ Հայ գիտէ թէ Ռուբինեանց շրջանէն սկսեալ Հայոց մէջ ծնունդ առած է դէպի Հռոմ յարում ցոյց տուող հատուած մը, որուն դէմ աւանդապահներ բուռն պայքար մղած են, և Հայ Եկեղեցին այսպէս ինքն իր մէջ պառակտուած է։

Կեսարիա՝ գտնուելով Կիլիկիոյ սահմանին վրայ անկարելի էր որ անհաղորդ մնացած ըլլար ազգը յուզող այդ խնդիրներուն ազդեցութիւնը կրելէ թէև այս մասին յիշատակութիւն մը չկայ։ Միայն գիտենք թէ իր եպիսկոպոսական աթոռին վրայ գտնուած է 1274էն 1307՝ Կոստանդին եպ. Կեսարացի (յետոյ կաթողիկոս) որ կատարելապէս կաթոլիկամիտ մըն էր (տես վերը, էջ 913-4) և անկարելի էր որ իր գաղափարներով խմորած չըլլար իր թեմէն մաս մը, որ Ռուբինեանց կործանումէն (1375) յետոյ պէտք է անհետացած ըլլայ, վասնզի այդ շրջանին չափազանց ակարացած էր դէպի կաթոլիկութեան միտումը, թէև միշտ գոյութեան ունեցած է Արեւմուտքի վրայ յոյս դնող հատուած մը, որ մանաւանդ ԺԶ. դարուն աւելի զօրացած կը թուի։ Հռոմ այդ դարուն ցոյց տալ կ'սկսի Արեւելքի քրիստոնեայ ժողովուրդներուն նկատմամբ շահագրգռութիւն մը և վերստին սին յուսադրութիւններով կ'օրօրէ անտանելի դրութեան մէջ ապրելու հարկադրուած կարգ մը ազգեր, որոնցմէ մէկն էր Հայը։ Այդ դարուն հետեւաբար երեւան կու գան բաւական թուով Հռոմէն փրկութիւն սպասող երազատես Հայեր, որոնք սակայն ընդդիմութեան կը հանդիպին ուրիշներու կողմէ՝ որոնք աւելի իրատես, անօգուտ և վնասակար կը համարէին Հայ եկեղեցիին անկախութիւնը զոհել։ Ուստի կ'ստեղծուի դարձեալ ազգային եկեղեցիին մէջ, բուռն պայքար մը որ անխուսափելիօրէն Կեսարիոյ Հայոց մէջ ալ արձագանգ գտած է քանի որ Գրիգոր վրդ. Կեսարացի, գլխաւոր ախոյեանը Հայ Եկեղեցւոյ անկախութեան, ժէ. դարու սկիզբէն մինչև 1636, փոխն ի փոխ իբր Պատրիարք Կ. Պոլիս և իբր Առաջնորդ Կեսարիա գտնուած է, և այնքան բուռն նախանձախնդրութեամբ մը մաքառած է իր ժամանակակից կաթոլիկութեան մէտ՝ կաթողիկոսին՝ Մելքիսեդեկ Գառնեցիի (1593–1628) և Կ. Պոլսոյ երկու պատրիարքներուն՝ Յովհաննէս Խուլի (ծն. 1554-1636†) և Զաքարիա Վանեցիի (1576–1634†) և իրենց համախոհներուն դէմ։

Գր. վրդ. Կեսարացի (տես վերը 916–919) որ 30–35 տարի իր ազդեցութեան տակ պահած է արեւմտեան կղերին մեծագոյն մասը, իր ծննդավայրին մէջ ապահովաբար թոյլ չէ տուած որ արմատ բռնէ կաթոլիկութիւնը որ 1622ին Բրոբականտայի և 1627ին անոր կից տպարանին հիմնարկութենէն յետոյ շատ աւելի գործօն ազդակ մը դարձած էր Արեւելքի մէջ և կը հարկադրէր Հայ կղերը խորհիլ ինքնապաշտպանութեան միջոցներուն վրայ որոնց մէջ առաջնակարգ տեղ ունէին Հայ Եկեղեցիին կազմակերպութիւնը և հայացի կրօնական դաստիարակութեան մը վերանորոգութիւնը։

ԺԷ. դարուն սկիզբէն՝ ուսեալ կղեր հասցնելու համար եղան ջանքեր, օրինակ և տիպար ունենալով կաթոլիկ դաստիարակութիւնը,

որով մեր եկեղեցականներն սքոլաստիկ ուղղութեամբ մարզուեցան։ Մասնաւորապէս ԺԸ. դարուն Յովհաննէս Կոլոտի Կ. Պոլսոյ մէջ հիմնած վարժարանին մէջ դաստիարակութիւն ստացողներէն ոմանք, որոնք սնած էին կաթոլիկ հեղինակներու գործերով — մեծ մասամբ թարգմանուած Խարբերդցի Ղուկաս վրդ. Գասպարեանէ — եթէ կրցան օգտուիլ անոնցմէ և իրենց ստացած պաշարով ամրապնդուիլ իրենց հարց դաւանութեան մէջ, գտնուեցան գոնէ որոշ թուով ուրիշներ ալ որոնք այդ կաթոլիկական ընթերցումներու ներշնչման տակ մոլորեցան և ինկան կաթոլիկութեան ծոցը։ Հետեւաբար իբր դարման ձեռք առնուած միջոցը աւելի շեշտեց պառակտումը և Հայ կղերէն մաս մը փոխանակ Էջմիածինի ուղղակի Հռոմի հնազանդիլ սկսաւ, և պայքարը շարունակուեցաւ սաստկութեամբ, նոյնիսկ հալածանքի մը բնոյթը առնելով երբեմն, մասնաւորապէս այնպիսի շրջաններու երբ տիրող կառավարութիւնը պատերազմի մէջ կ'ըլլար «Փրէնկ»ներու դէմ, որոնց հաւատքը ընդունած էին այդ Հայերը։ Սակայն երբ Ֆրանսա և Աւստրիա դաշնագիրներով ձեռք բերին կաթոլիկներու պաշտպանութեան իրաւունքը, զօրացաւ կաթոլիկ կողմը, և շատցաւ անոնց թիւը։

ԺԷ. դարուն վերջերը՝ ուր պայքարը առած է բուռն բնոյթ մը, կը տեսնենք կաթոլիկութեան յարող շատ մը եկեղեցականներ, որոնց կարգին նաև Կեսարացի բարձրաստիճան եկեղեցական մը, Մատթէոս Սարըն (✝ 1727) (տես վերը 920) որ իբր Ս. Կարապետի միաբան եթէ հոն յարում ցոյց տուած է կաթոլիկութեան, անիկա փաստ մըն է թէ Կեսարիա զերծ չէ մնացած կաթոլիկ խմորումէ որ եթէ ոչ ուղղակի քարոզութեամբ գէթ դաստիարակութեամբ և ուսուցմամբ ներմուծուած պէտք է ըլլայ հոն, քանի որ գիտենք թէ հայագէտ Լատին վարդապետներ, յետոյ Ուրբանեան դպրատան Հայ աշակերտներ, և 1700էն յետոյ՝ նաև Մխիթարեան և Անտոնեան միաբաններ, իբր միսիոնար Հռոմի կողմէ ղրկուած են Կ. Պոլիս և Թուրքիոյ ուրիշ հայաբնակ վայրերը, ինչպէս նաև Կովկաս, Պարսկաստան և Հնդկաստան։

Յիշուած է թէ Վարդան եպ. Յունանեան Թօզաթցի, օգնականը Լեհաստանի Առաջնորդ Նիկողոս եպ. Թորոսովիչին, 1675ին եպիսկոպոս ձեռնադրուելէն անմիջապէս յետոյ Հռոմի հրամանով, տասը տարի (1675-1685) բոլոր հայաբնակ գաւառները շրջած է, և Մելքոն եպ. Դապասեան, Մերտինի Հայ-Կաթոլիկ առաջնորդը, քարոզութեամբ 1685էն 1687, երկու տարի ամբողջ Հայաստան շրջած է, դարձեալ Հռոմի հրամանով, միայն դժբախտաբար չենք գիտեր թէ անոնք Կեսարիա ալ այցելա՞ծ են։ Միայն որոշ գիտենք թէ Աբրահամ Արծիւեան կամ Ծովիզեան, Հալէպի եպիսկոպոսը, իր ձեռնադրութենէն (1710) քիչ յետոյ քարոզութեամբ ինչպէս Գաղատիա, Տրապիզոն և Կ. Պոլիս գացած է, այցելած է նաև Կեսարիա (Հ. Գր. Ծվրդ. Գալէմքեարեան, Սարգիս Արքեպ. Սարաֆեան, 258), ուր իր և իր նմանները կը թուին յաջողած ըլլալ շահիլ իրենց համախոհներ, որոնցմէ մէկն էր անշուշտ բնիկ Վրթանէս եպ. Ստեփանեանը որ 1706էն 1721 եթէ ոչ իրապէս գէթ անուանապէս «Կեսարիոյ Արքեպիսկոպոս» տիտղոսը կրեց (տես վերը 921) և ուրիշ մըն էր՝ այն Կարապետ եպ.ը որ 1743ին Թրիէստէ վախճանած է (էջ 922)։

Նոյնպէս անկարելի է որ Կաթոլիկութեան քարոզութիւն ըրած ըլլայ Սարգիս Արքեպ. Սարաֆեան որ իբր առաջնորդ հոն պաշտօնավարեց 1730էն 1738 (տես վերը, էջ 922-923)։



Ասոր աշակերտներէն կը յիշուի Կեսարացի Յովհան վրդ. Արիմանեան (1705-1781) —Թրիէստի Հայ-Կաթոլիկ երէցը— որ ապահովաբար Կեսարիոյ մէջ իրեն յարած պիտի ըլլայ։

Այնպէս որ ԺԸ. դարէն սկսեալ Կաթոլիկութեան յարող Հայեր գտնուած են Կեսարիոյ մէջ։

Սարաֆեանի յաջորդը՝ Աւետիք եպ. Եւդոկիացի (1738-1744) կրցած էր խոհականութեամբ վերջ տալ կրօնական վէճին որ իր նախորդներուն օրով ծայր տուած էր, սակայն ինչպէս կը տեսնուի իրեն յաջորդ Դաւիթ եպ. Երեւանցիի (1744-1776) ատեն դարձեալ յուզուած են անոնք և Կեսարիոյ մէջ դարձեալ կաթոլիկի և ոչ կաթոլիկի պայքարներ տեղի ունեցած են։ Սակայն կաթոլիկութեան յարողները մեծ թիւ մը չունէին, այնպէս որ երկար ատեն Հայ-Կաթոլիկ կաթողիկոսները որոնք Զմմառ կը նստէին պէտք չեն տեսած եպիսկոպոս մը կամ հովիւ մը նշանակելու Կեսարիոյ համար։

Ասոր համար պարագաներն ալ նպաստաւոր չէին։ Այդ կաթողիկոսները Լիբանանի բարձունքները ապաստանած, հազիւ մի քանի եկեղեցական կը գտնէին գաղտնի ղրկելու համար ասդին անդին, վասնզի կրօնի ազատութիւնը ընդունուած չէր Թուրքիոյ մէջ և Բ. Դուռը տրամադիր չէր նուիրագործելու գոյութիւնը Ֆրէնկներու հետ սերտօրէն կապուած համայնքի մը։ Հետեւաբար անոնք որ կաթոլիկ էին համոզումով, ստիպուած էին չխզել Հայ Եկեղեցւոյ հետ իրենց կապերը, որչափ ատեն որ առանձին համայնք մը կազմելու արտօնուած չէին։ Հետեւաբար հակառակ անոր որ 1690էն սկսեալ Սարգիս եպ. Եւդոկիացի Գասպարեան Սահէթճիի գլխաւորութեամբ առանձին հասարակութիւն մը կազմած էին «Կաթոլիկ-Հայեր» կոչմամբ, և Հայ եկեղեցւոյ հաւատարիմ մեծամասնութիւնը կ'անուանէին «Հերձուածող Հայեր», և նոյնիսկ կը պժգային անոնցմէ և կը յաճախէին լատին եկեղեցիներ և կը դիմէին մասնաւորապէս Յիսուսեան կրօնաւորներու, պատարագի, խոստովանանքի և հաղորդութեան համար, քաղաքային իրաւանց հետ կապ ունեցող կրօնական ծիսակատարութեանց համար պարտաւորուած կ'զգային ինքզինքնին դիմելու Հայ եկեղեցիին։ Իրենց մկրտութիւնները և յուղարկաւորութիւնները Հայ եկեղեցիներուն մէջ տեղի կ'ունենային և իրենց ամուսնութիւնները Հայոց Պատրիարքարանը կ'արտօնէր, վասնզի կառավարութիւնը զիրենք կը ճանչնար Հայոց Պատրիարքարանին ժողովուրդ։ Հայ կղերը գիտնալով անոնց մտայնութիւնը, բնական է շատ սիրով չէ որ կը կատարէր այս կրօնական ծիսակատարութիւնները՝ անոնց վրայ որոնք իրեն համար կը ներկայանէին հատուած մը որ Հայ չէր այլ «Ֆրէնկ», «երկաբնակ», «քաղքեդոնիկ», «ախպարմա», «հերձուածող», «հերետիկոս», «հեստեայ», «լօբերական», «չնչահաւաս», «թերս մէզհէպ», «պոչը կտրած», «պապադաւան», «Հռոմէական» և այլն, սակայն Թուրք պետութեան երկիւղը կը հարկադրէր կատարելու, այն յոյսով թէ այդ երկպառակութիւնը օր մը պիտի ջնջուէր, մինչ ընդհակառակը անիկա օրէ օր աւելի կը շեշտուէր, վասնզի Հայ-Կաթոլիկները ամէն ճիգ կ'ընէին իրենց բաժանումը նուիրագործելու։ Սակայն հարիւր տարուան ժամանակամիջոց մը անցաւ առանց իրականանալու այդ բաժանումը իրաւապէս (de jure), հակառակ անոր որ արդեամբ (de facto) արդէն կատարուած էր, վասնզի 1740 Նոյեմ. 26էն սկսեալ

Հայ-Կաթոլիկ կաթողիկոսի մը օծումով անջատ Նուիրապետութիւն մը ստեղծուած էր(1), որ սակայն շատ կղզիացեալ շրջանակի մը մէջ սահմանափակուելու դատապարտուած էր և չէր կրնար իր ազդեցութիւնը տարածել պետութեան կեդրոնին մէջ, և միայն որոշ գաւառներու մէջ կը գործէր գաղտնի և ծածուկ։

Լիբանանի Հայ-Կաթոլիկ կաթողիկոսները այս շրջանին Կեսարիոյ հետ յարաբերութիւն չեն ունեցած, վասնզի հոն Կաթոլիկ Հայեր գոյութիւն չունէին՝ նախապէս գտնուածներուն հեռացած կամ ծածկուած ըլլալուն համար։ Արդարև՝ հալածանքը կամ մեկուսացումը որուն մատնուած են կաթոլիկութեան յարողները, Հայ Եկեղեցիին հաւատարիմ մնացած Հայերու կողմէ, տեղ տեղ պատճառ եղած էր որ անոնք անհանդուրժելի գտնալով իրենց ապրած միջավայրը հեռանային իրենց բնակավայրէն կամ իրենց համոզումը և հաւատքը ծածկէին, չենթարկուելու համար Հայերու կողմէ անարգանքի և պետութեան կողմէ՝ հալածանքի։

Նշանակելի է որ Կեսարացիք իբր Թրքախօս հակառակ անոր որ ազգային գլխաւոր յատկանիշներէն մէկը եղող Հայ լեզուն գործածելէ դադրած են, սակայն կրօնքի մասին թոյլ չեն եղած և շատ ամուր փարած են իրենց ազգային Եկեղեցիին։ Շատ նշանակելի է որ մասնաւորապէս անոնք վիժեցուցին Թուրք Կառավարութեան ճնշումին տակ գոյացած այն իրաւախոհական կարգադրութիւնը որ 1820 Մարտ 8 թուակիր «Հրաւէր Սիրոյ» տետրակով հռչակուեցաւ։ Կեսարացիք և Ակնցիք էին որ Կ. Պոլսոյ մէջ աղմուկ հանեցին, գրգռութիւն սերմանելով, և ամէն կողմ տարածայնելով թէ Պատրիարք և Պատրիարքարան Կաթոլիկութիւն ընդունած են։ Նոյնպէս անոնք էին գլխաւոր դերակատարները այն նշանաւոր ցոյցին որ 8 Օգոստ. 1820ին կատարուեցաւ Պօղոս Պատրիարքին դէմ (Ազգապատում, 3467–8), վասնզի պարագլուխներուն մէջն էին Կարապետ սարկաւագ և Յակոբ ա կխտավաճառ Կեսարացիները, որոնք նոյնիսկ նահատակուեցան իբր պետութեան դէմ ըմբոստներ, կախաղան բարձրանալով Կ. Պոլսոյ մէջ Պայազիտի և Ջէմպէրլի Թաշի հրապարակները (18 Սեպտ. 1820)։ Այսպէս Կեսարացիք գլխաւոր դերակատարները եղան այն ըմբոստութիւն նկատուած շարժումին և վիժեցուցին ամէն

---

(1) Առաջին կաթողիկոսն էր Աբրահամ Արծիւեան կամ Ծավիզեան Հալէպի առաջնորդը, որ 1710–1714 Կեսարիա այցելած էր պահ մը։ Ան ծնած էր 1679ին Այնթապ, 1706ին կրօնաւորած և 1710ին եպ. ձեռնադրուած։ 1740 Նոյեմ. 26ին կաթողիկոս կ'օծուի երեք եպիսկոպոսներէ որոնք ինքն պատրաստած էր օտարածէս ընթերականերով, երեք եպիսկոպոսներով ուրիշ մը ձեռնադրելու Նիկիական աւանդութեամբ։ 1742 Սեպտ. 30ին Հռոմ երթալով կ'ստանայ Պալլիում (1742 Դեկտ. 8)։ 1743 Յուլիս 11ին Հռոմէն ճամբայ կ'ելլէ և կը փորձէ երթալ Կ. Պոլիս հոն Պատրիարքութիւն կազմելու կամ Սիս, գրաւելու համար Կիլիկիոյ կաթողիկոսական աթոռը, սակայն չի համարձակիր, ուստի աստ անդ դեգերելէ յետոյ կ'երթայ առանձնանալ Լիբանան Գրէմի Ամենափրկչի վանքը (1743 Հոկտ 6) ուր կը կատարէ ձեռնադրութիւններ և կարգադրութիւններ և կը ջանայ իր հաստատած նուիրապետութիւնը ամրապնդել։ Վախճանած է 1749 Հոկտ. 1ին։



իրաւախոհական կարգադրութիւն, ընդդիմութիւն ցոյց տալով, զիջողական քաղաքականութեան դէմ որ ընդգրկած էին ազգին վարիչները՝ պետութեան պահանջին համակերպելով։ Կեսարացիք նոյն անզիջող ուղղութիւնը ցոյց տուած են իրենց բնիկ երկրին մէջ և ասոր համար է որ Կեսարիոյ մէջ գրեթէ կաթոլիկութիւնը չէր արմատացած։

Սակայն որչափ որ կաթոլիկ Հայեր չկային, զարմանալի է որ Գրիգոր Պետրոս Զ. (1812–1840) կաթողիկոս 14 Մայիս 1826ին **Միքայէլ վրդ. Տէր Աստուածատուրեան** Բրգնիկցին, կը ձեռնադրէ եպիսկոպոս, իբր տիտղոսաւոր «Կեսարու Գամրաց», անշուշտ ի յարգանս այն նշանակութեան որ Կեսարիոյ աթոռը ունեցած էր քրիստոնէական եկեղեցւոյն համար ընդհանրապէս և Հայ եկեղեցիին համար մասնաւորապէս։ Եթէ այս ձեռնադրութենէն յետոյ կար մտադրութիւն մը կաթոլիկութիւնը տարածելու Կեսարիոյ մէջ, ատիկա կարելի չեղաւ վասնզի դէպքերը՝ քաղաքական պատահարներու բերմամբ, կաթոլիկութեան համար առին արտասովոր կերպով աննպաստ հանգամանք մը, այնպէս որ այս եպիսկոպոսը երբեք Կեսարիա չգնաց և մնաց Զըմմառի վանքը և վարեց Ընծայարանին վերատեսչութիւնը (1826–1831)։

Հայ-Կաթոլիկները՝ պահ մը (1827) յաջողութիւններ ձեռք բերելէ և նոյնիսկ Հայոց Պատրիարքարանը հաւանեցնելէ յետոյ իր ձեռքին տակ կաթոլիկ եկեղեցականներէ փոխանորդ մը ունենալու, — Հայ-Կաթոլիկներու գործերը կառավարելու համար —, յանկարծ դէպքերը առին իրենց համար ձախող ուղղութիւն մը։ 1827ին Թուրքիոյ պատերազմը Անգլիոյ, Ֆրանսայի և Ռուսիոյ դէմ, դժպատեհ առիթ մը նկատուեցաւ երկու կողմին համար վրէժխնդրական ամբաստանութիւններով իրարու վնասելու։

Յակոբ Թընկըրեան, սեղանաւոր սպարապետ Մէհէմմէտ Խուսրէվ փաշայի, առիթը բարեպատեհ կը համարէ հարիւր տարիներէ ի վեր հետապնդուած անջատ Պատրիարքութիւն մը կազմելու փափաքին իրագործումը ձեռք բերելու, իր տան մէջ գումարելով ժողով մը և ձախող գաղափարը յղանալով պատրաստելու կայսեր մատուցուելիք աղերսագիր մը որով կը խնդրէին «զատուցանել զմեզ ի Հայոց, եւ տալ մեզ յատուկ Պատրիարք եւ եկեղեցի» և որպէսզի իրենց խնդրանքին ոյժ տան իբր պատճառ կը ներկայացնէին սա թէ Հայերը կը մտածեն «կանգնել ինքեանց զմասնաւոր թագաւորութիւն իմն ՚ի Հայաստան, ընդ հովանաւորութեամբ տէրութեան Ռուսաց» և թէ իրենք չեն ուզեր «միաբան» երեւիլ «նոցա եւ հաղորդ չարախորհուրդ ապստամբութեան նոցա»:

Այս ապստամբութեան գաղափարը մեծ յուզում առաջ կը բերէ և Սուլթան Մահմուտ բացատրութիւն կը պահանջէ իրեն վստահելի Պեզճեան Ամիրայէն և Կարապետ՝ օրուան և Պօղոս՝ Նախորդ Պատրիարքներէն և երբ կ'ապահովուի թէ Հայոց ապստամբութեան խորհուրդը պարզ զրպարտութիւն մըն է, այս գործին նախաձեռնարկները կը դատապարտէ աքսորի և Յակոբ Թընկըրեանը կը տարագրէ Կեսարիա (3 Հոկտ. 1827)։

Կը պատմուի թէ այս զրպարտութեան հակահարուածը եղած է Կարապետ Պատրիարքի այն յայտարարութիւնը թէ ինքն կ'ստանձնէ ամէն պատասխանատուութիւն իր ժողովուրդին համար որոնց բոլոր մտադրութեանց և դիտումներուն տեղեակ է խոստովանահայրերու մի-

ջոցով, սակայն չի կրնար ստանձնել նոյն պատասխանատուութիւնը անոնց համար որոնք Հայ քահանաներուն չեն խոստովանիր այլ կը յարաբերին «ֆրէնկ» քահանաներուն հետ, որոնց վրայ իշխանութիւն չունի ինքն։ Այս յայտարարութիւնը պատճառ կ'ըլլայ որ 1827 Հոկտ. 16ի Նաւարինի դէպքէն և Դեկտ. 18ի պատերազմի հռչակումէն յետոյ ձիւն ձմեռ եղանակին բոլոր ծովեզերեայ քաղաքներու կաթոլիկ բնակիչները ներքին գաւառները աքսորուին, (30 Դեկտ. 1827) իբր «համախոհ» ֆրէնկներուն և կասկածելի։ Թերևս այս պատճառով ուրիշ Հայ-կաթոլիկներ ալ Կեսարիա կ'աքսորուին, ուր կը մնան մինչև պատերազմին վախճանը (1829)։

Երեք յաղթական պետութիւնները հարկադրեցին, Էտիրնէի խաղաղութեան դաշինքով (1829 Հոկտ. 9) Թուրքիան ճանչնալ Յունաստանի անկախութիւնը և տալ իր հպատակներուն կրօնական ազատութիւն։ Այս վերջին պայմանը՝ դրուած էր Արևելքի մէջ կաթոլիկները հովանաւորող Ֆրանսայի պահանջումով, պատերազմի միջոցին կաթոլիկներու դէմ գործուած հալածանքներուն կրկնութեան արգելք ըլլալու համար և ապահովելու համար ճանաչումը անոնց կրօնական ազատութեան, որ նախաշաւիղը պիտի ըլլար անոնց անջատ հասարակութիւն մը դառնալուն։ Արդարև նախ Ֆրանսայի դեսպանը Անգլիոյ դեսպանի գործակցութեամբ, 1829 Նոյեմ. 11ին, Սուլթանին ի պատիւ տրուած խնջոյքի մը մէջ, աքսորեալ կաթոլիկներու դարձը խնդրեց և ստացաւ։ Յետոյ երկու դեսպանները ինքնուրոյն կազմակերպութիւն մը խնդրեցին, իբր միակ միջոց տևական գժտութիւնները և միջադէպերը վերջացնելու համար։ Այս խնդրանքը ընդունուեցաւ և 1830 Յունվար 6ին հրովարտակով մը արտօնութիւն տրուեցաւ կաթոլիկներուն կազմել անջատ հասարակութիւն մը «Քաթոլիկ միլլէթի» անունով, և անջատ Ազգապետով մը։ Սակայն այս շնորհը փոխանակ հասարակութեան վարչութիւնը կարգաւորելու աւելի խառնակեց։ Բ. Դուռը կ'ուզէր որ հասարակութիւնը մէկը ընտրէր և իրեն ներկայացնէր իբր հոգևոր պետ, մինչ կաթոլիկ եկեղեցւոյ սկզբունքներուն համաձայն Պապը կ'ուզէր ինքն ուղղակի անուանել։ Ուստի բանակցութեամբ Պիոս Ը. Պապը հաճեցուցին որ ինքն ալ հաւանի ժողովրդական ընտրութեան։

Առաջին ընտրուողը եղաւ 1830 փետր. 27ին՝ Անտոն վրդ. Նուրիճանը, որ նոյն տարին, Յուլիս 11ին եպիսկոպոս ձեռնադրուեցաւ Պապէն Հռոմի մէջ, ստանալով անկէ արքեպիսկոպոսութեան աստիճան և իրաւունք՝ Նախագահական աթոռ ունենալու և պէտք տեսնուած թեմերուն վրայ ինքն ալ իր կարգին մինչև 10 եպիսկոպոս ձեռնադրելու։ Սակայն անոր չտրուեցաւ բոլոր Հայ-կաթոլիկներու վրայ իրաւասութիւն, զի Թուրքիոյ հարաւային և կեդրոնական մասերը արդէն իրենց կաթողիկոս պետ մը ունէին։

Բոլոր այս կարգադրութիւնները և տուչութիւնները եղած էին առանց հաւանութեան և վաւերացման Բ. Դրան՝ որ մերժեց ճանչնալ Նուրիճանի հանգամանքը անոր Աւստրական հպատակ ըլլալը առարկելով։ Հայ-կաթոլիկները ստիպուած իբր քաղաքային պետ կամ Ազգապետ ընտրեցին 1830 Դեկտ. 22ին Յակոբոս վրդ. Չուխուրեանը։

Այսպէս Կ. Պոլսոյ մէջ երկու իշխանութիւն կազմուեցաւ։ Մէկը կրօնական, որուն պետն էին Նախագահները և ուղղակի կախեալ ու-



նէին Պապական Նուիրակէն և միւսը աշխարհիկ՝ որուն գլուխն էին Ազգապետ-Պատրիարքները որոնք համայնքին գործերուն համար պատասխանատու էին Բ. Դրան։ Իսկ անդին Լիբանանի մէջ կը շարունակէր կաթողիկոսութիւնը, որ իրեն ստորադաս ունէր 12 եպիսկոպոսական վիճակներ, որոնցմէ մէկն էր Կեսարիա(1)։ Իսկ Կ. Պոլսոյ Նախագահական աթոռին թեմական եպիսկոպոսներն էին վեց(2)։

Կ. Պոլսոյ Ազգապետ-Պատրիարքն էր որ միայն կը ներկայացնէր ճանչցուած իշխանութիւնը և կերպով մը Նախագահին և Լիբանանի կաթողիկոսին գործակալն էր։

Այս կացութիւնը տևեց 36 տարի, մինչև որ այս երեք իշխանութիւնները իրարու միացան յանձին Անտոն Հասուն եպ.ին (1866)։

Եթէ 1830ի հրովարտակը հասարակութեան գործերը չէր կարգաւորեր և կանոնաւորեր, սակայն կրօնի և գործելու ազատութիւն կը շնորհէր Հայ-կաթոլիկ կղերին։ Այն ապահովութիւնը որ կ'ստանային Հայ-կաթոլիկները պատճառ եղաւ որ կարգ մը տիտղոսաւոր եպիսկոպոսներ իրենց անուանական եպիսկոպոսութիւնը արժեցնեն հաստատուելով զանազան քաղաքներու մէջ։

Միքայէլ եպ. Տէր-Աստուածատուրեան տիտղոսաւորը «Կեսարու Գամրաց» սակայն չկրցաւ այս պատեհութենէն օգտուիլ և երթալ Կեսարիա ուր դաշտ չի կար գործելու, սակայն 4 Մարտ 1831ին ղրկուեցաւ Սեբաստիա, Եւդոկիա, Բրգնիկ և Կիւրին, իբր կաթողիկոսական փոխանորդ այդ կողմերուն, որոնք կը նկատուէին առանձին թեմ պատրիարքական և կաթողիկոսին տեղապահները կը վարէին զայն անոր անունով (Անդրէաս Գերապայծառ Աղեքսանդրեան, Համառօտ պատմութիւն երկոտասան կաթողիկոսաց Կիլիկիոյ, Վենետիկ, 1906, էջ 40–41 և Համառօտ պատմութիւն եպիսկոպոսական աթոռոց ի պատրիարքութեան Կիլիկիոյ, 1905, էջ 22)։

Միքայէլ վրդ. Աստուածատուրեան արդէն այդ շրջանակին ծանօթ էր ո՛չ միայն իբր բնիկ Բրգնիկցի այլ իբր մեծաւոր կամ Աւագերէց Բրգնիկի, տասը տարի (1815-1825) հոն պաշտօնավարած ըլլալով (Անդրէաս վրդ. Աղեքսանդրեան, Պատմութիւն ականաւոր քաղաքին Սեբաստիոյ եւ սահմանաց նորա կամ արքեպիսկոպոսութեան նորին, էջ 329) և վեց տարի (1825-1831) Զմմառ մնալէ յետոյ կրկին կը դառնար հոն գործելու, այս անգամ եպիսկոպոսական աստիճանով։ Այս առթիւ իրեն պարտականութիւն կը տրուի մօտէն շահագրգռուիլ Կեսարիայով, որուն տիտղոսաւորն էր։

Միքայէլ եպ. Տէր Աստուածատուրեան տասներկու տարի (1831–1843) վարեց Սեբաստիոյ և շրջակայից, ինչպէս Եւդոկիոյ և Կիւրինի Հայ-կաթոլիկ հօտին առաջնորդութիւնը «Կեսարիոյ Արքեպիսկոպոս» տիտղոսով, առանց Կեսարիոյ մէջ ոևէ արդիւնք ունենալու։ Տակաւին այս պաշտօնին մէջ գտնուած ատեն երբ Գրիգոր Պետրոս Զ. մեռաւ 1840 Սեպտ. 22ին, Զմմառ գումարուած եպիսկոպոսներու ժողովը զինքն ուզեց ընտրել կաթողիկոս (30 Յունիս 1841) սակայն Միքայէլ

---

(1) Միւսներն էին Եգիպտոս, Երուսաղէմ, Անտիոք, Հալէպ, Մամտուն, Տիարպէքիր, Մալաթիա, Սեբաստիա, Թօգատ, Մարաշ, Ատանա։

(2) Պուրսա, Գաղատիա, Տրապիզոն, Կարին, Արդուին, Խարբերդ։

Արքեպ. Կեսարիոյ, որ 10 տարիէ ի վեր կը գտնուէր Սեբաստիոյ կողմերը, համբուն երկարութիւնը մէջ բերելով ո՛չ միայն չուզեց Զմմառի եպիսկոպոսաց ժողովին մասնակցիլ, այլ յայտնապէս մերժեց իրեն առաջարկուած պաշտօնը, մատնանշելով իր կողմէն իբր ընտրելի՝ Յակոբ Արքեպ. Հոլասեանը՝ Ամասիոյ տիտղոսաւորը, որ ընտրուեցաւ և երկու տարուան կարճ պաշտօնավարութենէ մը յետոյ մեռաւ (6 Փետր. 1843) (տես Աղեքսանդրեան, Համառօտ պատմ. Երկոտասանն կաթողիկոսաց Կիլիկիոյ, էջ 44-45)։

Իր յաջորդին ընտրութեան համար երբ կրկին Զմմառի մէջ եպիսկոպոսները գումարուեցան (25 Յունիս 1843), դիմեցին կրկին իրեն ինչպէս նաև Հռոմ, որպէսզի յորդորէ զինքն ստանձնելու առաջարկուած պաշտօնը։ Այս անգամ համակերպեցաւ և ընտրուեցաւ կաթողիկոս։

Միքայէլ Արքեպ. Կեսարիոյ կոչուեցաւ Գրիգոր Պետրոս Ը. (1843–1866) և Պապէն ստացաւ իր հաստատութիւնը 25 Յունուար 1844ին և պալլիում զգեցաւ 17 Մարտ 1844ին։

1847ին գնաց Հռոմ ուր մնաց մէկ տարի։ Իր պաշտօնավարութեան ժամանակ ըրաւ բարեկարգութիւններ, կարգաւորութիւններ, վիճակային կազմակերպութիւններ, և գրեթէ ինքն հիմ դրաւ Զմմառի կաթողիկոսութեան և Կ. Պոլսոյ պատրիարքութեան միութեան։ 1853ին Զմմառի աթոռին մէջ եպիսկոպոսական ժողով գումարեց Աթոռին ներքին բարեկարգութեան համար և ընդարձակ կանոնագիրք մըն ալ պատրաստեց պատմական և դաւանական մասերով ճոխացած, սակայն Հռոմ զայն չվաւերացուց:

Անիկա պարտաւորուեցաւ Հասունի հետ մաքառիլ թեմական վիճակներու և իրաւասութեանց սահմաններուն մասին, որոնք խսկապէս ներքին դժուարութեանց կը բախէին, զի մէկ կողմէն Փոքր Հայք ու Կիլիկիան Լիբանանու կաթողիկոսութեան և միւս կողմէն Պոնտոսն ու Կապադովկիան Կ. Պոլսոյ արքեպիսկոպոսութեան վիճակ տրուած էին, մինչ շատ քաղաքներ տարբեր առմամբ երկու կողմերուն ալ կրնային պատկանիլ։ Ասոնցմէ մէկն էր օրինակի համար Կեսարիա։ Գրիգոր Պետրոս Ը. կաթ. Մեռաւ 1866 Յունուար 8ին 'ի Զմմառ։

Կեսարիոյ Հայ կաթողիկէ առաջնորդութեան իրական հիմնադրութիւնը նաև կատարած է նոյնինքն այս կաթողիկոսը որ իր ընտրութենէն վեց տարի յետոյ՝ 1850ին «յանուն Կեսարիոյ Կապադովկեցւոց» եպիսկոպոս ձեռնադրեց **Յովհաննէս եպիսկոպոս Հաճեան** Բրգնիկցին Զմմառի վանքի միաբանութենէն(1)։

Յովհաննէս Ե պ. Հաճեան, երբեմն Պօղոս վրդ. Հաճեան իր վարդապետութեան ատեն Միքայէլ եպ. Աստուածատուրեանի ձեռքին տակ գործած էր Սեբաստիոյ, Թոգատի և Կիւրինի շրջանակին մէջ։

Միքայէլ եպ. Աստուածատուրեան, երբ կաթողիկոս ընտրուելով ստիպուեցաւ թողուլ իր պատրիարքական փոխանորդի պաշտօնը, դէպի Զմմառ մեկնելէ առաջ 1843 Մարտ 25ին Եւտոկիոյ Աւետում Ս. Աստուածածինի եկեղեցիին մէջ Ծայրագոյն վարդապետութեան աստիճան տուաւ Պօղոս վրդ. Հաճեանի և զայն իրեն փոխանորդ կարգեց անոր տալով վիճակաւորի իրաւասութիւններ (տես կոնդակին բնագիրը, Անդրէաս վրդ. Աղեքսանդրեան, Պատմ. Սեբաստիոյ, էջ 332–333), իսկ կաթողիկոսանալէն յետոյ յատուկ կոնդակով մը (տես նոյն, էջ 333-334) հաստատեց (1843 Օգոստ. 2ին) Պօղոս վրդ. Հաճեանի կաթողիկոսական փոխանորդութիւնը, որ կարճատև եղաւ վասնզի 1844ին Սեբաստիոյ կաթողիկոսական փոխանորդ կարգուեցաւ Իգնատիոս Արքեպ. Գալըպճեան Ամասիոյ Արքեպիսկոպոսը, և ինքն դարձաւ Զմմառ։

Պօղոս վրդ. Հաճեան, 1850ին, եպիսկոպոս կը ձեռնադրուէր, Յովհաննէս անունով, և ըստ ոմանց իր պաշտօնը կամ տիտղոսը, կը մնար, —ինչպէս իր նախորդինը— անուանական, զի ինքն Կեսարիա չէր նստեր այլ երբեմն Ատանա իբր կաթողիկոսական փոխանորդ և ժամանակ մը Զմմառի վանքը՝ իբր աթոռակալ (տես Համ. Պատմ. Եպիսկոպոսական Աթոռոց, 33)։ Իսկ Վարդան Ծ.վրդ. Խաչէրեան, բնիկ Կեսարացի և երբեմն Կեսարիոյ և այժմ Եգիպտոսի Հայ Կաթոլիկ եպիսկոպոսական փոխանորդ, կը պատմէ թէ Գրիգոր Պետրոս Ը. Կաթողիկոսի մասնաւոր դիմումներ եղած ըլլալով բաւական կարեւոր թիւ մը կազմող ընտանիքներու կողմէ, կաթոլիկութիւնը ընդունելու համար, անիկա օծած է 1850ին Պօղոս վրդ. Հաճեանը Կեսարիոյ եպիսկոպոս և զայն ղրկած է «Յանձանօրս Կեսարիա, չorեպանի մը կերպարանքին սակ: Հոն այս վիճակին մէջ Արհի Հաճեան ինն տարի մնալէն վերջ, երբ կաթողիկէութիւնը ընդունողներուն թիւը կը բազմանայ եւ անոնք ազդեցիկ միջամտութիւններու հետեւանօք իբրեւ ուրոյն համայնք մը կը ճանչցուին, մէկ օրէն միւսը թափթփուր ապրող Հաճեան իբրեւ եպիսկոպոս մէջտեղ կ'ելլէ եւ անմիջապէս Բէչի Գաբու թաղին մէջ ընդարձակ տուն մը վարձելով 1860ին հոն կը հաստատէ եկեղեցի եւ թաղային դպրոց մը»:

Վտարանդին (Մասիս, թ. 3845) և անկէ առնելով հաւանօրէն Ընձախարհիկ Բառարան, կը հաստատեն թէ կաթոլիկութիւնը Կեսարիոյ մէջ սկսած է 1860ին, մինչ ըստ Աղեքսանդրեանի (Համ. Պատմ. Երկոտասանն Կաթողիկոսաց, էջ 49) առաջին անգամ 1862ին հոն երեւան կու գան կաթոլիկութեան յարող Հայեր։

Իսկ զայն տարածողը Վտարանդին կը ներկայացնէ Պօղոս վրդ. Էմմանուէլեանը «որ ո՛չ միայն քարոզութեամբ այլեւ գրիչով կը ճգնի եւ արդէն մեծ մեծ հատորներ հրատարակած է: Ժամանակ մը Վենետկոյ Մխիթարեանք եւս մասնակցած էին անոր գործունէութեան»:

Կաթոլիկութիւն 'ի Կեսարիա ըլլայ առանձին, Յովհաննէս եպսկ. Հաճեանի կամ Պօղոս վրդ. Էմմանուէլեանի կամ ըլլայ երկուքին միասնական ջանքերով տարածուած, իրողութիւն է որ 1860ին կամ 1862ին Կեսարիոյ տիտղոսաւոր Արքեպիսկոպոսը՝ Յովհաննէս Հաճեան, գացած հաստատուած է Կեսարիա և իրական իշխանութիւն մը ի գործ դրած, վասնզի հոն առաջ եկած էին գոնէ դոյզն թուով Հայ-կաթոլիկներ, վասնզի ժամանակները նպաստաւոր էին կաթոլիկ հաւատածաւալութեան համար, Խրիմի պատերազմը (1854-1856) մեծապէս զօրացուցած ըլլալով Ֆրանսայի ազդեցութիւնը Արեւելքի մէջ։ Նապոլէոն Գ.ի հետապնդած հմայքի քաղաքականութիւնը և այն կորովի պաշտպա-

(1) Հոս աւելորդ չըլլայ դիտել տալ թէ հակառակ անոր որ 1850ին ձեռնադրուած տիտղոսաւոր Կեսարիոյ Արքեպիսկոպոս մը գոյութիւն ունէր, 1855ին դարձեալ իբրև Կեսարիոյ անուանական արքեպիսկոպոս ձեռնադրուած է Յակոբոս Պօզաճեան Անկիւրացի (1808–1883) որ նոյն տարին Վիէննայի Մխիթարեանց Աբբահայր ընտրուած էր։

նութիւնը որ ցոյց տուաւ Լիբանանի կաթոլիկ բնակչութեան նկատմամբ, խորունկ ազդեցութիւն ունեցան և դարձեալ Հայոց մէջ երեւան եկան մարդիկ որոնք կաթոլիկութիւնը միջոց մը նկատեցին քաղաքական պաշտպանութիւն մը ապահովելու համար ազգին և շատեր դէպի կաթոլիկութիւն միտում ցոյց տալ սկսան։ Այնպէս որ կաթոլիկութիւնը Անատոլուի զանազան մասերուն մէջ տարածուեցաւ։

Հետեւաբար Գրիգոր Պետրոս Ը.ի (1843-1866) և երբեմնի «Կեսարու Գամրաց» տիտղոսաւոր Արքեպիսկոպոսին, կաթողիկոսութեան շրջանը, ինչպէս շատ մը տեղերու Հայ-կաթոլիկներու կազմակերպութեան, եկեղեցիներու և մատուռներու կառուցման և հովուութիւններու և առաջնորդութիւններու կազմակերպութեան, նոյնպէս նաև Կեսարիոյ Հայ-կաթոլիկներու թէ՛ եկեղեցիին և թէ՛ Առաջնորդութեան հիմնաւորման ժամանակամիջոցը եղաւ։

ՄԻՔԱՅԷԼ ԵՊ. ՏԷՐ-ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐԵԱՆ
Տիտղոսաւոր Կեսարու Գամրաց (1826-1843)
Յետոյ Գրիգոր Պետրոս Ը. Կաթ. (1843-1866)

Յովհաննէս եպ. Հաճեանի պաշտօնավարութեան շրջանին կարեւոր փոփոխութիւն մը տուաւ Հայ-կաթոլիկ նուիրապետութեան վարչութեան մէջ, Գրիգոր Պետրոս Ը.ի մահէն (8 Յունուար 1866) յետոյ Զմմառի մէջ գումարուած եպիսկոպոսական ժողովը (14 Սեպտ. 1866), որուն կը մասնակցէր նաև Կեսարիոյ վիճակաւորը, կաթողիկոս ընտրեց Կ.Պոլսոյ Դահերէց Անտոն Հասունը, և վերջ տուաւ այն երկուութեան որ գոյութիւն ունէր Հայ-կաթոլիկ եկեղեցական վարչութեան մէջ և կեդրոնը դարձաւ Կ. Պոլիս, ուր նստաւ կաթողիկոս-Պատրիարքը և Զմմառ՝ փոխանորդ մը։

Կեսարիա այսպէս կապուեցաւ Կ. Պոլսոյ։ Յովհաննէս Արքեպս. Հաճեանի և իր օգնականին անդուլ ջանքերուն հակառակ մինչև 1870 կաթոլիկութիւնը զգալի յառաջդիմութիւն մը չէր բրած հոն։

Քէչի Գասու թաղին մէջ վարձուած տունը իբր աղօթարան գործածուեցաւ երկար ատեն, հակառակ որ Հաճեան Գերապայծառ 1868ին յատուկ եկեղեցւոյ մը շինութեան ձեռնարկած էր քաղաքին բաղդատաբար ամենամաքուր և գեղեցիկ թաղերէն մէկուն՝ Պէօյիւք Չէշմէ Եօնիւի մէջ։ Այս նոր եկեղեցիին հիմնարկէքը կատարուեցաւ 1871ին, սակայն շինութիւնը ընդհատուեցաւ 14-15 տարիներ «ինչ ինչ պատճառներով», այնպէս որ Հաճեան գերապայծառի օրով անկարելի եղաւ լրացնել։



Կաթոլիկութիւնը Կեսարիոյ մէջ Յիսուսեանց հաստատուելէն յետոյ մեծ մղում ստացաւ (Վտարանդին, Մասիս, 3845). «Սոցա սակն աւելորդ է ըսել որ, շահասէր Կեսարացւոց հրապոյր մի է եւ իրենց հաստատած դպրոցաց մէջ թէեւ անուամբ միայն եւ ոչ իրական՝ զաղղիերէնն եւ ուրիշ առաւելութիւն մը» (Նոյն)։

Յովհաննէս եպ. Հաճեան 1879ի վերջերը անուանուեցաւ Մեծաւոր Զմմառի միաբանութեան, սակայն Կեսարիայէն չմեկնած վախճանեցաւ 18 Մայիս 1880ին։

Հասուն 1880 Հոկտ. 18ին և 27ին գումարեց եպիսկոպոսական ժողով Կեսարիոյ եպիսկոպոսին ընտրութեան և այլ խնդիրներու համար։ Կեսարիոյ վիճակաւոր ընտրուեցաւ **Պօղոս վրդ. Էմմանուէլեան** Թէլ-Էրմէնցի, այն որ Կեսարիոյ մէջ կաթոլիկութեան ներմուծման աշխատողներէն՝ և գլխաւորներէն՝ մին եղած էր և Յովհաննէս եպ. Հաճեանի պաշտօնավարութեան շրջանին ալ անոր օգնականը և գլխաւոր գործակիցը։

Հասուն չկրցաւ զայն ձեռնադրել եպիսկոպոս վասնզի նոյն տարին Հռոմ կոչուելով 13 Դեկտ. 1880ին կարտինալ ընտրուեցաւ և այլեւս չդարձաւ Կ. Պոլիս։

Հասունի յաջորդեց Ստեփանոս Պետրոս Ժ. Ազարեան (6 Յուլիս 1881ին) որ 18 Նոյեմբ. 1881ին(1) ձեռնադրեց Պօղոս վրդ. Էմմանուէլեանը Արքեպիսկոպոս Կեսարիոյ (Ընդ. Օրացոյց, 1905, էջ 445)։

Պօղոս եպ. Էմմանուէլեան ծնած է 1829 Յունուար 16ին Մերտինի Թէլ-Էրմէն գիւղը։ Նախակրթութիւնը առած է Զմմառի վանքին մէջ, իսկ բարձրագոյն ուսումը՝ Հռոմի Ուրբանեան վարժարանին մէջ, ուրկէ վկայուած է «վարդապետ Աստուածաբանութեան եւ փիլիսոփայութեան» տիտղոսով։

ՊՕՂՈՍ ԵՊ. ԷՄՄԱՆՈՒԷԼԵԱՆ

Պօղոս եպ. Էմմանուէլեան պատրաստուած եկեղեցական մըն էր որ իր վիճակին մեծապէս օգտակար եղած է թէ իբր շինարար և թէ իբր գործունեայ անձ մը։

Անիկա իր քահանայութեան առաջին օրէն Կեսարիա ղրկուած էր Մեծաւորներու կողմէ և հոն անցուցած ամբողջ կեանքը, կատարեալ նուիրումով գործակցելով իր նախորդին։

---

(1) Գեր. Ալեքսանդրեան հակառակ անոր որ իր Համ. Պատմ. Երկոտ. Կաթողիկոսացի մէջ (61) Ազարեանի առաջին գործերէն մէկը կը համարէ այս ձեռնադրութիւնը իր Համ. Պատմ. եպիսկոպոսական աթոռոց գործին մէջ այս ձեռնադրութեան թուականը նշանակած է 26 Օգոստ. 1884, ինչ որ ճիշդ չի թուիր։

Իր եպիսկոպոսացումէն յետոյ յաջողեցաւ աւարտել շինութիւնը Հայ Կաթոլիկ Ս. Խաչ փառաւոր եկեղեցիին 1889 թուականին, ինչպէս կը հասկցուի զետեղուած լատին և հայ արձանագրութենէն որ շինութեան թուական ցոյց կու տայ 1871–1889։

Այս եկեղեցիին շինութեան նպաստած է Լեւոն ԺԳ. Պապը՝ Ստեփանոս Ազարեան պատրիարքի միջոցաւ (Բնաշխարհիկ Բառարան):

Եկեղեցիին ճարտարապետն էր Հայ մը՝ Մանճըքընցի Ջէքի Գալֆա, որ միանգամայն շինած է Թոմարզայի և Էվէրէկի մեծաշէն եկեղեցիները։ Եկեղեցին հոյակապ էր, ամբողջ քարաշէն և սրբատաշ, Հռոմի աշխարհահռչակ Ս. Պետրոս եկեղեցիին նմոյշին վրայ կառուցուած, բնական է անոր անկատար մէկ մանրանկարը ըլլալով։ Ճշգրտօրէն խաչի ձև ունէր, հսկայ և յաղթանդամ չորս կամարներու վրայ երկնուղէշ բարձրացած առանց սիւնի։ Երեք վերնատուն ունէր կանանց համար և վիթխարի և լայնանիստ գմբեթ մը՝ որուն գագաթը բարձրացած էր երկրորդ սիւնազարդ փոքր գմբեթ մը։

Եկեղեցին դուռէն մինչև խորանին ետեւը 60 մէթր երկայնութիւն, 40 մէթր լայնութիւն ունէր։ Իսկ բարձրութիւնը գետնէն մինչև գմբեթին բարձունքը 60 մէթր էր։ Երկու կողմը կային երկու ընդարձակ աւանդատուններ։

Եկեղեցւոյ արձանագրութեան հայերէն մասին պատճէնն է հետեւեալն որ տրամադրեց Հ. Վարդան Ծվրդ. Խաչերեան.

Սուրբ խաչ օգնական
Տառապեալ մարդկան.
Յաւերժական ի Հռովմայ պետն Լեւոն ԺԳ.է իմ փառք,
Սակաւ իւիք օճան եղեալ Ստեփաննոս կաթողիկոս պատրիարք
Այլ ի զարմէն Էմմանուէլեանց Արհին Պաւղոս իմ պսակ
Երից երկար ճանապարհաց եղեալ վշտամբեր շահատակ:
Ի վշտաց նորուն
Տուաւ ինձ անուն.
Արձան իմ կանգուն
Անկուն հոգւոյն:
Ուղղափառ Հայուն,
Աղօթից իմ տունն»:

Պօղոս եպ. Էմմանուէլեանի ջանքերով արդէն Հայ կաթոլիկներու թիւը 1886ին հասած էր 40 տունի, այսինքն մօտաւորապէս 200-250 անձի։

Իր պաշտօնավարութեան վերջերը, 1895–1897 թուականներուն, ըստ Հ. Գելցերի (Համառօտ պատմ. Հայոց 1897 էջ 78) Կեսարիոյ Հայ կաթոլիկները ունէին 1500 անձ, 3 հայազգի, 4 Յիսուսեան քահանայ, 2 տարրական դպրոց։ Տրդատ Վրդ. Պալեան սակայն կը հերքէր ճշդութիւնը Հայ-Կաթոլիկներու թիւին, ըսելով թէ Կաթոլիկ Հայոց թիւն է՝ 198 երկու սեռէ և այս փոքրիկ թիւէն զատ, միայն զինուորական տուրքը Կաթոլիկ Հայոց հոգեւոր հովիւին միջոցով տալու համար կառավարական տոմարին մէջ արձանագրուած էին 224 անձեր, (ըսել է ընդամէնը 422 անձ)։ Այս վերջիններու հոգեւոր ամէն գործերը կը կատարուէին Հայ Եկեղեցիին մէջ (նոյն էջ 129)։

Վտարանդին (տես նոյն) կ'ըսէ թէ Էմմանուէլեան եպ. «միշտ արդա-



րութեան պալատն է: Որովհետեւ մենք հոն ո՛չ առաջնորդ մը եւ ո՛չ փոխանորդ մը ունինք, բնականապէս յիշեալ վարդապետին ծուղակը կ'իյնան, որ շատ լաւ գիտէ մարդոց տկար կողմը:»

Պօղոս եպ. Էմմանուէլեանի կը գործակցէին Յիսուսեան օտար և հայ վարդապետներ, որոնցմէ յիշենք Գրիգոր Վրդ. Աշըգեան, Արսէն Վրդ. Խօրասանճեան, Մատթէոս Վրդ. Սիսլեան, Մեսրոպ Վրդ. Քէշիշեան եւայլն։

Անիկա նաև հիմնած էր վարժարան մը ուր երբեմն կը յաճախէին 150 աշակերտներ։

1888ին Յիսուսեանք ալ ունէին փայլուն վարժարան մը որուն դէմ կը մաքառէր Տրդատ եպ. Պալեան, արգիլելով Հայ տղոց հոն յաճախելը։ Յիսուսեանք կը զրպարտեն Հայոց առաջնորդը իբր արտասահմանի լրագիրներու թղթակից և զանազան սպառնալիքներ կ'ընեն (Փունջ, 20 փետ. 1888 թ. 2086)։

Էմմանուէլեան Արքեպ. մասնակցեցաւ 1890ին Ազարեան Պատրիարքի 'ի Բաղկետոն գումարած Սիւնոդոսին, որուն ամէնէն գլխաւոր գործը եղաւ միջին բանաձեւերով բառնալ Հայ-Կաթոլիկ հասարակութեան մէջ պառակտումը որուն պատճառ եղած էր Հասունը, Հասունեան և Հակահասունեան հատուածներու բաժնելով հասարակութիւնը և տարիներու պայքարի մը ծնունդ տալով։

Պօղոս Արք. Էմմանուէլեան մասնակցեցաւ նաև Ազարեան Պատրիարքի մահէն (19 Ապրիլ 1899) յետոյ 'ի Կ. Պոլիս 14 Յուլիս 1899ին գումարուած եպիսկոպոսներու ժողովին որուն քուէներով նոյն օրը ընտրուեցաւ Կաթողիկոս-Պատրիարք և 6 օգոս.ին պաշտօնի ձեռնարկեց Պօղոս Պետրոս ԺԱ. անունով։

Պապական Նուիրակին ձեռքով Կ. Պոլսոյ Սէնթ-Էսփրի եկեղեցւոյ մէջ ստացաւ Լեւոն ԺԳ. Պապէն շնորհուած պալլիումը 18 փետր. 1900ին։

Իր մասնաւոր ուշադրութեան առարկայ ըրաւ Զմմառի միաբանութեան և եկեղեցական այլ հաստատութեանց կարգաւորութիւնը։

Պօղոս Էմմանուէլեան Պատրիարք, պարզասէր անձ մըն էր, անտեղեակ մայրաքաղաքի կեանքին բարդութեանց և նենգութեանց։ Իր պաշտօնավարութիւնը առանց միջադէպի անցաւ, զի մասնաւոր մտադրութիւններ և նպատակներ չունեցաւ և աւանդապահ ուղղութեան հետեւեցաւ և հակազգային քայլեր չառաւ։

Վախճանեցաւ 18 Ապրիլ 1904ին։ Պօղոս Պատրիարք Էմմանուէլեան հմուտ էր այլեւայլ արեւելեան և արեւմտեան լեզուներու, ինչպէս նաեւ իմաստասիրական և աստուածաբանական և այլ գիտութեանց։

Հեղինակած է երկհատոր հայերէն փիլիսոփայութեան գիրք մը, համառօտ աստուածաբանութիւն մը հայատառ թրքերէն, ինչպէս նաև Այն ու Ասէք խորագրով նոյնպէս թրքերէն գիրք մը ծիսից և սովորութեանց վրայ։ Ունէր նաև ձեռագիր գործեր։

Էմմանուէլեան եպ. իր Պատրիարք ընտրուելէն յետոյ Կեսարիոյ եպիսկոպոս ձեռնադրեց 1901 Նոյեմ. 10ին **Մատթէոս եպ. Սիսլեան** Մարաշցին, նոյնպէս Զմմառի միաբանութենէն։

Մատթէոս եպ. Սիսլեան ծնած էր 1840 Յունվար 2ին և վարդապետ ձեռնադրուած 1866 Յունվար 1ին։ 1872էն ի վեր Կեսարիա կը պաշտօնավարէր իբր քահանայ։ Չորս տարուան կարճ պաշտօնավա-

րութենէ մը յետոյ, հրաժարեցաւ իր պաշտօնէն 1908ին և քաշուեցաւ Կ. Պոլիս, ուր վախճանեցաւ 1915ին։

Մատթէոս եպ. Սիսլեան Կեսարիա անցուցած էր իր քահանայու-



ՄԱՏԹԷՈՍ ԵՊ. ՍԻՍԼԵԱՆ



ՄԵՍՐՈՊ ՎՐԴ. ՔԷՇԻՇԵԱՆ

թեան ամբողջ շրջանը՝ Էմմանուէլեանի պէս և ինքն է որ հսկած է Ս. Խաչ եկեղեցւոյ շինութեան։

Մատթէոս եպ. Սիսլեանի Կեսարիայէն մեկնելէն յետոյ իբր առաջնորդական փոխանորդ պաշտօնավարեց **Մեսրոպ վրդ. Քէշիշեան** (1909–1912) բնիկ Կեսարացի Զմմառի միաբանութենէն, և երկար ատենէ ի վեր Կեսարիա գտնուող կրօնի ու գործունեայ վարդապետը, որ մինչև 1912, Պահապանեան եպ.ի ժամանումը, վարեց Առաջնորդարանի գործերը, ձեռնհասութեամբ։ 1910ին Սիւրէյա պէյի սպանութեան ատեն մեծ խնդիր ունեցած է։

Պահապանեան եպ.ի ժամանումէն յետոյ տակաւին երկու տարի մնացած է Կեսարիա և ապա գացած Զմմառ (1914) փոխ-մեծաւորի պաշտօնով։ 1924ին Գանատա մեկնած է և չի գիտցուիր թէ ի՞նչ եղած, Հաւանօրէն կարգաթող։

**Անտոն Գերապայծառ Պահապանեան**, բնիկ Գաղատացի։ Իր կրօնական ուսումը ստացած է Բարիզի Սէն-Սիւբլիս հռչակաւոր վարժարանին մէջ։ Քաջահմուտ է ֆրանսերէնի և լատիներէնի։ Իբր քահանայ փայլուն և արդիւնաւոր պաշտօնավարութիւն ունեցած է իր հայրենիքին՝ Գաղատիոյ մէջ։

1911ին Հռոմի մէջ օծուեցաւ եպիսկոպոս Կեսարիոյ թեմին վրայ։ «Արհի Պահապանեան 1915ին հալածանքին եւ տարագրութեան բոլոր անդոհ-



ները ճաշակած է եւ տառապանքի մոլեխինդի բաժակը մինչեւ ցմրուր քամած», ինչպէս կ'ըսէ իր փոխանորդը Վարդան Ծվրդ. Խաչէրեան, որ ծնած է 1888 Մայիս 19ին Կեսարիա և հոն Յիսուսեանց վարժարանին մէջ առած է իր նախնական ուսումը։ Վարդան վրդ. Խաչէրեան 1902ին Զմմառ կղերանոց կ'երթայ և հոն 1910 Օգոստ. 15ին քահանայ կը ձեռնադրուի, և երեք ամիս յետոյ (1910 Նոյ.) կը ղրկուի իր ծննդավայրը, Պահապանեան Գերապայծառի ձեռքին տակ աշխատելու հա-



ԳԵՐ. ԱՆՏՈՆ ԵՊ. ՊԱՀԱՊԱՆԵԱՆ
Կեսարիոյ Հայ – Կաթոլիկ
վերջին Առաջնորդը



ՎԱՐԴԱՆ ԾՎՐԴ. ԽԱՉԷՐԵԱՆ
Առաջն. Փոխանորդ

մար։ 1912ին Զմմառ իբր կղերանոցի հայերէնի ուսուցիչ հրաւիրուելէ և վեց ամիս հոն մնալէ յետոյ, դարձեալ կը դառնայ Կեսարիա, ուր կը պաշտօնավարէ իբր ժողովրդապետ և ապա իբր եպիսկոպոսական փոխանորդ։ 1915 Յուլիսին Հայերը տարագրուած ատեն Կեսարիոյ Հայ կաթոլիկները նախապէս զերծ կացուցուեցան, սակայն յետոյ շրջակայ գիւղերը ցրուեցան։ Պահապանեան եպ. և Վարդան վրդ. եւս Թալաս տարուեցան։

Ի վերջոյ գիւղերը տարագրուած այրերը ջարդուեցան կամ բռնադատուեցան իսլամութեան, և Պահապանեան եպ. և իր հետեւորդները տարագրուեցան դէպի Մուսուլ 1915 Նոյեմ. 15ին, ճամբան սպաննելու կարգադրութեամբ։ Սակայն շնորհիւ բարեացակամութեան Գերման սպայի մը ազատեցան և աքսորուեցան Երուսաղէմ, ուր մնացին մինչև Ջինադադար։

Ջինադադարէն յետոյ Պահապանեան եպ. դարձաւ իր վիճակը ուր

մնաց երկու տարի եւս։ Քէմալական կառավարութիւնը զրպարտութեամբ մը վեց ամիս բանտարկեց զինքն, անասանելի չարչարանքներու ենթարկելով զայն։ Հուսկ ուրեմն Ս. Պապին միջնորդութեամբ բանտէն ազատելով մեկնեցաւ Կեսարիայէն, և յետոյ անցաւ արտասահման։ Հիմա կը գտնուի Հարաւային Ֆրանսայի Էքս ան Բրովանս քաղաքը և կը վարէ Մարսիլիոյ և շրջակայից հոգեւոր հովիւի պաշտօնը, պահելով նաև Կեսարիոյ Թեմական եպիսկոպոսի տիտղոսը։ Իսկ Վարդան վրդ. Խաչէրեան Երուսաղէմէն Կ. Պոլիս գնաց, Կեսարիա անցնելու մտադրութեամբ, սակայն չյաջողելով եկաւ Եգիպտոս, ուր այժմ կը վարէ Առ. Փոխանորդութիւնը։

Կեսարիոյ Հայ-կաթոլիկներու թիւը 1902–1903ին բարձրացած էր 1220 հոգիի (Բնաշխարհիկ Բառարան)։ 1915ին տեղահանութենէն առաջ ըստ Վարդան Ծ.վրդ. Խաչէրեանի անոնց թիւն էր 400 ընտանիք, պաշտօնական արձանագրութիւններու համեմատ, և ըստ այլոց մինչև 1500 անձ։ Այս թիւերը ցոյց կու տան թէ ինչպիսի եռանդով կը քարոզուէր և ինչ ջանքեր կը կատարուէին։



ՅԱՐՈՒԹԻՒՆ ՎՐԴ. ԼԱՉԻՆԵԱՆ
Ծն. 1864 Էվէրէկ, Մեռ. 1915 Մէնպիճ

Կաթոլիկները նոյնպէս Կեսարիոյ Թեմերուն մէջ փորձած են տարածուիլ սակայն մեծ յաջողութիւն չեն գտած։ Միայն կը յիշուի թէ Մունճուսունի մէջ կրցած են ունենալ իրենց սակաւաթիւ հետեւողներ, որոնց թիւը ոմանք ցոյց կու տան 50 անձ և այլք 30–40 ընտանիք։ Մունճուսունի հոգեւոր հովիւն էր Հ. Յարութիւն վրդ. Լաչինեան որ ինչպէս տեսնուեցաւ (էջ 796) տարագրուեցաւ Մէնպիճ ուր մեռաւ։ 1902ին ասոնց համար հաստատուած է առաքելութիւն մը, որ կը մատակարարէր անդռանձին եկեղեցի մը և դպրոց մը, որոնք մինչև տեղահանութիւն տեւեցին։ Իսկ Էվէրէկի և Ռումտիկինի (Եօզկատի թեմ) մէջ բացուած մասնաւոր առաքելութիւնները կարճ տեւողութենէ մը յետոյ փակուած են։

## Դ.

## ՀԱՅ-ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՀԱՄԱՅՆՔ

### 1. ԵՐԻՑԱԿԱՆՆԵՐ

Աւետարանականութիւնը կամ Բողոքականութիւնը, որ աւելի քան հարիւր տարիներու անցեալ մը ունի իր ետին, նոյնպէս Կեսարիոյ մէջ կրցած էր իրեն ոտքին կռուան գտնել։

Ինչպէս Կաթոլիկութիւնը նոյնպէս նաև Բողոքականութիւնը օգտուեցաւ Էտիրնէի դաշնագրութենէն, վասնզի արտաքսուած Ամե-



րիկացի միսիոնարները 1830ին դարձան Թուրքիա և այս անգամ գործել սկսան Հայոց մէջ։ Տուայթ և Էլի Սմիթ միսիոնարները 1830ին կը շրջին Թուրքիոյ զանազան կողմերը և կը քարոզեն։

1831ին Կուտէլ կը հաստատուի Կ. Պոլիս, 1834ին Ճէբր՝ Իզմիր, Շնայտէր՝ Պրուսա և Ճօնսթըն՝ Տրապիզոն և կը յաջողին իրենց համախոհներ շահիլ։ 1834ին կը բացուի Կ. Պոլսոյ մէջ Աւետարանական առաջին վարժարանը և Իզմիրի մէջ Միսիոնարաց տպարանը՝ ուրկէ կը հրատարակուին կրօնական գիրքեր, հայերէն և հայատառ թուրքերէն։

1836ին Կ. Պոլսոյ մէջ կը հաստատուի բողոքական առաջին եկեղեցին, և նոյն տարին Տուայթ՝ առաջին Բողոքականութեան յարող Հայերէն՝ Սեննեքերիմ Տէր-Մինասեանի հետ, որ իբր թարգման կ'ընկերանար իրեն, կրկին շրջան մը կ'ընէ Անատոլու, և կը յաջողի որսալ իր կողմը Նիկոմիդիոյ մէջ նոյնիսկ երկու քահանաներ՝ Զըրթըլեան Տ. Վրթանէս և Տ. Յարութիւն անուն։ Հաւանական է խորհիլ թէ Մր. Տուայթ այցելած է նաև Կեսարիա, վասնզի 1838էն առաջ հոն Բողոքականութեան յարող Հայերու յիշատակութեան կը հանդիպինք։ Այսպէս «Անգլիացի» մը (Հայաստանի Կոչնակ, 1934, էջ 317) որ Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը այցելած է Մոլթքէէն՝ այսինքն 1838էն առաջ, կը գրէ թէ «գիւղին մէջ Հայ ընտանիք մը կար, որ բողոքականութիւնը ընդունած ըլլալուն համար Էվէրէկէն այստեղ էր աքսորուած քահանաներուն դրդումով: Ասոնք գրեթէ բանադրանքի տակ կ'ապրէին, ոչ մի Հայ չէր համարձակեր խօսիլ անոնց հետ, եւ թիւրքերու կողմէն կը կերակրուէին: Այս միջոցին դիմած էին յուսալով որ հալածանքի տակ իրենց դիմադրութեան ոյժը պիտի տկարանար, բայց այս տեսակ նշան մը չէր երեւար: Այս ընտանիքին վիճակը յիշեցինք միաբանութեան, երբ ամէնէն ուրախ տրամադրութեան մէջ կը գտնուէին, այսինքն ընթրիքի ատեն: Վանահօր (= Յարութիւն վրդ. Թորոսեան) յօնքերը խոժոռեցան, բաժակը պարպեց եւ միայն բառ մը արտասանեց «տէլի-լէր», այսինքն «խենթեր», բայց միաբաններէն մէկը իր ձեռքը վեր բարձրացնելով ըսաւ. «այս ձեռքը տէրն մեր Յիսուս Քրիստոսն է, եւ մատները Հայերը, Յոյները, Կաթոլիկները, Ասորիները եւ Բողոքականներն են: Մէկը մեծ, մէկը փոքր, մէկը զօրաւոր, միւսը տկար, մէկը շիտակ, միւսը քիչ մը ծուռ, բայց ամէնքն ալ մէկ եւ նոյն խորհրդաւոր ընտանիքի անդամներն են»: Միւս միաբանները զովեցին եւ գնահատեցին այս համարձակ խօսողի զգացումները, բայց վանահօր խոժոռութիւնը աւելի աճեցաւ, ուրիշ բաժակ մըն ալ պարպեց եւ դէպի մեզ դառնալով ըսաւ, թէ իրենց պարտականութիւնը հիմա հիւրասիրութիւն էր եւ ոչ թէ բանավէճ, եւ այս նկատողութենէն վերջ, որով թերեւս կ'ուզէր մեզ յանդիմանել, ուրիշ բաժակ մըն ալ պարպեց»:

Այս տողերը ցոյց կու տան թէ Բողոքականութիւնը մտած էր Կեսարիա և գոնէ սակաւաթիւ հետեւողներ կամ համակիրներ կային։

Այս Հայ Եկեղեցւոյ մէջ սողոսկող նոր պառակտումը տեսնելով Ամիրաները պէտք կը տեսնեն միջոցներ ձեռք առնել արգելք հանդիսանալու համար Բողոքանութեան տարածման դէմ։ 1839 Փետր. 7ին Պատրիարքարան կը տարուին և Փետր. 11ին կ'աքսորուին խումբ մը Հայեր, որոնք Բողոքականութեան յարած ըլլալու կասկածին տակն էին, մինչ բացի մէկէն՝ Յովհաննէս Տէր-Սահակեանէն, որ իսկապէս բողոքական էր, միւսները ո՛չ բողոքական էին և ո՛չ ալ Բողոքականութեան համակիր, այլ իմաստասիրական ուսմանց կը հետեւէին և այս նպատակով միսիոնարներէն օգտուիլ կ'ուզէին։

Այս աքսորականներէն մանաւորապէս երկուքը, պատ. Յովհաննէս Տէր Սահակեան(1), Կ. Պոլսոյ մէջ առաջին անգամ Բողոքականութեան յարողներէն մին և Ֆիզիքա Պօղոս Պատուելին (1788–1858) որ բողոքական չէր բնաւ և ոչ ալ միսիոնարներու համակիրներէն, աքսորուեցան Կեսարիա, ուր մնացին Ս. Կարապետի վանքը, մօտաւորապէս 15 ամիս, և Կ. Պոլիս դարձան 1840 Մայիս 12ին։ Հոն պատ. Յովհաննէս Տէր Սահակեան ապահովաբար իր համոզումները և գաղափարները տարածելէ չդադրեցաւ, իսկ Ֆիզիքա(2) ուսումնական գետնի վրայ, տեսակ մը առաքելութիւն կատարեց, հոն աշակերտներ հասցնելով։ Պատ. Յով. Տէր Սահակեանի քարոզութիւնները նշանակելի արդիւնք մը չեն ունեցած Կեսարիոյ մէջ, սակայն բոլորովին ալ անհետեւանք չեն մնացած, վասնզի հակառակ հալածանքին Բողոքականութիւնը որոշ չափով մը մտազբաղում մը կը դառնար, հետզհետէ աւելի ծաւալ գտնելով։ Կեսարիոյ մէջ անոր առաջին քարոզիչը եղաւ Նիկոմիդիացի Տ. Վրթանէս քհ. Զըլթըլեան, որ պատ. Յովհաննէս Տէր-Սահակեանէն յետոյ, երկրորդ բողոքականն էր որ աքսորուեցաւ Կեսարիա։



ԵԶՆԱԿ Տ. ՎՐԹԱՆԷՍ ԳՐԻԳՈՐԵԱՆ
ԿԱՄ ԶԸԼԹԸԼԵԱՆ

Այս քահանան որ ծնած էր 1787 Սեպտեմբերին, 1815ին ամուսնացած և 1821 Մարտին քահանայ

(1) Գրիգոր պատուելի Փէշտիմալճեանի աշակերտներէն, 1836-1838 ուսումնապետ և բնագիտութեան ուսուցիչ Խասգիւղի Ներսէսեան վարժարանի։ Ամէնէն կանուխ բողոքականութեան յարողներէն մին, որ վերակացու կարգուած էր Իզմիրի բողոքական տպարանէն ելած գիրքերու վաճառման։

(2) Ֆիզիքա Պօղոս ծնած էր Գըրք Աղաճ (Իզմիր) և աշակերտած Իզմիրի մէջ՝ Յովհան Միրզա քհ.ի։ 1808ին Կ. Պոլիս կու գայ և իբր հմուտ բնագիտութեան կը կոչուի Ֆիզիքա: Ատեն մը դասախօսած է Պեզճեան Ամիրայի տան մէջ։ Ուսուցչութիւն ըրած է Իզմիր, Օրթագիւղ, Պրուսա և Երուսաղէմ։ 1830ին կրկին կը դառնայ Կ. Պոլիս և Զուքուր խանի մէջ դասարան մը կը հիմնէ, շուկայի արհեստաւոր տղոց համար։ Մեծ համբաւ ունէր իբր փիլիսոփայ և հաւանօրէն իր դասախօսութեանց մէջ յայտնած իմաստասիրական լայնամիտ կարծիքներն էին որ զինքը Բողոքականութեան յարած կարծել տուին և իր աքսորին պատճառ եղան։



ձեռնադրուած էր Նիկոմիդիոյ և Պրուսայի Առաջ. Պօղոս Արքեպ. Գարագոչեանէ և մինչև 1840 կը քահանայագործէր Նիկոմիդիոյ մէջ ուրկէ կու գար Կ. Պոլիս, արդէն Տուայտի քարոզութիւններով՝ յարած Բողոքականութեան։

Ստեփանոս Աղաւնի Պատրիարք 25 Ապրիլ 1841ին զայն Նիկոմիդիա կը ղրկէ հոն եղած խառնակութիւնները քննելու և կաթոլիկութեան յարողները յորդորելու համար։

31 Յունուար 1843ին Նիկոմիդիոյ քահանաները անոր փիլոնազըրկութիւնը կը պահանջեն իբր բողոքականամիտ։ Տ. Վրթանէս քհ. կը ձգէ Նիկոմիդիան և կը մեկնի Հայաստան և 1843 Հոկտ.ին կը դառնայ Կ. Պոլիս։ Աստուածատուր Պատրիարք (1841-1844) զայն կ'աքսորէ 27 Մարտ 1844ին ժամկոչի մը ընկերակցութեամբ նախ Արմաշի վանքը և հոնկէ Կեսարիա՝ զինուորի մը հսկողութեամբ: Հազիւ հոն կը մնայ 3-4 ամիս, վասնզի 18 Յուլիս 1844ին կ'ստանայ ազատութեան հրովարտակ և Կ. Պոլիս կը դառնայ 4 Օգոստ. 1844ին։ Սակայն այս կարճ ժամանակամիջոցն իսկ բաւական կ'ըլլայ իրեն՝ քարոզութիւններ ընելու և խմորում առաջ բերելու համար։

Հայ Բողոքականութեան պատմագիրը պատ. Ստեփան Իւթիւճեան կ'ըսէ թէ «Երբ Եզնակ Տէր Վրթանէս Գրիգորեան տարագրուեցաւ 'ի Կեսարիա... այն ցրտագին օրերուն մէջ՝ նոր ու զարմանալի յանցաւորութեամբ մը որ էր լոյս եւ ճշմարտութիւն փնտռելն ու քարոզելը՝ իւր եռանդն ու նախանձը վասն ճշմարտութեան այնպէս էր, զորս տարագրութիւն ու կապանք կարելի չէր որ մարէին. միտքը ազատ էր խորհելու եւ լեզուն ազատ էր խօսելու եւ քարոզելու:

Առաջին Ամերիկացի միսիոնարն որ հաստատուած էր Կեսարիոյ մէջ185 2ին կը տեղեկագրէր թէ «Տեսանք մեր աստ ժամանելէն այսքան տարիներ առաջ հոս տարագիր եղող Տ. Վրթանէսի աշխատութեան արդիւնքը եւ կը յուսանք աւելին եւս տեսնել»:

Հակառակորդք տարագրած են աստ մարդը, բայց կարող եղած չեն մարել անոր մէջ եղած լոյսը: Այնքան մեծ եղած է անոր եռանդը ի քարոզութիւն Բանին եւ ի տարածումն ճշմարտութեան, որ հակառակորդք ետ դարձնել ուզած են զինքն 'ի տարագրութենէ որ չըլլայ թէ տեղւոյս բոլոր ժողովուրդը խմորուի: Եւ ո՜չ ապաքէն Կեսարիոյ եւ իւր շրջակայից ներկայ վիճակը ապացոյց մըն է Սաղմոսերգուին բարի յաջողութեան նկատմամբ բանին. «Ան որ լալով կ'երթայ ցանելու սերմը տանելով, անշուշտ ցնծութեամբ պիտի դառնայ իր ցորենի խուրձերը բերելով»:

Ի ձեռն Եզնակ Տէր Վրթանէս Գրիգորեանի ի կապանս հաւատքով սերմանած սերմէն իբր վեց կամ եօթն տարի ետք մատաղատունկ Աւետարանական եկեղեցի մը յառաջ եկաւ 'ի Կեսարիա միայն եօթն արու եւ մէկ էգ անդամներով՝ իսկ երթալով մեծցաւ այդ եկեղեցին եւ իւր ճիւղերն աջ եւ յահեակ արձակելով Աւետարանական Հայոց ցանուած ընդարձակագոյն վայրերէն մին եղաւ Կեսարիա իւր բազում աւաններովն ու գիւղերովն» (Ծագումն եւ Ընթացք Աւետարանականութեան 'ի Հայս, ԲԻՒՐԱԿՆ, ժ. տարի, 1892, թ. 196, էջ 106)։

Ինչպէս կը տեսնուի Եզնակ Տէր Վրթանէս քհ. արդարև չափազանց եռանդուն քարոզիչ մը եղած է Բողոքականութեան, որ այսքան կարճ ժամանակի (1844 Ապրիլ–Յուլիս ) մէջ այսքան խորունկ ներգործութիւն մը ունեցած, և խմորած է Կեսարիան։

Անիկա Կեսարիայէն դարձին երբ բանադրուեցաւ և կարգալոյծ

հաշակուեցաւ(1) բոլորովին նուիրուեցաւ Բողոքականութեան և 1848ին Բերա արդի Ս. Երրորդութիւն եկեղեցիին մօտը բացաւ դպրոց մը որ միայն մէկ տարի ապրեցաւ։

Ինքն որ գլխաւոր գործաւորներէն մին էր Հայ-Բողոքականութեան զարգացման և պատճառներէն մին անոնց Մայրենի Եկեղեցիէն անջատման, թերեւս հալածանքին պատճառով որ իր դէմ գործադրուեցաւ, անցաւ այն սահմանը որ իր մտքին մէջ ունէր և հեռացաւ իր Մայրենի Եկեղեցիէն որմէ բաժնուելու միտք չունէր թերեւս։ Կ'երեւի անիկա բարեկարգական մըն էր որ կրօնափոխ ըլլալ հարկադրուեցաւ, կամ իր կեանքին վերջալոյսին խղճահար մը՝ որ իր վիշտը կը յայտնէր։

Միայն առով կրնայ մեկնուիլ այն «Կրօնափոխութիւնը բարեկարգութիւն չէ» խորագրով գրքոյկը որ 1868ին հրատարակեց գրեթէ 80ամեայ հասակին մէջ(2)։ Եզնակ Տ. Վրթանէս Գրիգորեան մեռաւ 17 Մայիս 1875ին 87 տարեկան (Թէոդիկ, Ամենուն Տարեցոյց, 1913, էջ 367-8)։

Եզնակ Տ. Վրթանէս Գրիգորեանի կեսարիոյ մէջ Բողոքականութեան առաջին սերմերը ցանելէն հազիւ վեց տարի յետոյ կեսարիա կու գայ, 1850ին, Տոքթ. Զարլս Ֆարնսըրթ, որ ոչ միայն կեսարիոյ այլ նաև շրջակայից մէջ քարոզութիւններով Բողոքականութիւնը կը տարածէ, երբ արդէն Մատթէոս Պատրիարքի խստութիւնները պատճառ եղած էին Անգլիոյ, Բրուսիոյ և Ամերիկայի Միացեալ Նահանգաց դեսպաններուն միջամտութեան և 1847 Նոյեմ. 3ին կայսերական հրովարտակով կազմութեանը՝ առանձին հասարակութեան մը «Բրոթէսթան Միլլէթի» անունով։

Տոքթ. Զարլս Ֆարնսըրթ իր գործունէութեան դէմ արգելք չունէր։ Հետեւաբար շրջեցաւ Կապադովկիոյ զանազան հայաբնակ վայրերը և յաջողեցաւ 1855ին Զոմախլուի և 1860ական թուականներուն Մունճուսունի մէջ եթէ ոչստուար գէթ սակաւաթիւ հետեւողներ գտնել։

Թալաս, Էրքիլէթ, Էվէրէկ, Ճիւճիւն և մինչև հեռաւոր Ագառայ, Նիյտէ, Կ'ունենան առաւել կամ նուազ թուով Հայ-Բողոքականներ, ամէնն ալ արդիւնք յարատեւ քարոզութեանց։

(1) Տ. Վրթանէս քհ. երբ Կեսարիայէն Կ. Պոլիս դարձաւ, Մատթէոս եպ. Զուխաճեան Պատրիարք (1844-1848) եղած էր արդէն և Բողոքականութեան տարածման դէմ միջոցներ ձեռք առնել սկսած։ Անիկա այս նորազանդ քահանան, որ Բողոքականութեան մոլեռանդ քարոզիչ մը դարձած էր, իր ներկայութեան կոչեց 4 Սեպտ. 1845ին, համոզելու համար, սակայն չկրցաւ։ Ընդհակառակը անիկա անդուռն լուտանքներ ըրաւ որոնք արձագանգ գտան հանրութեան մէջ և գրգռութիւններ առաջ բերին։ Պատրիարքը՝ կրօնականներու հետ համախորհուրդ, 1846 Յունուար 12ին որոշեց բանադրել «չիք և թըշուառ Իզնիմիտցի Վրթանէս քահանայ»ն և մերժել և արգիլել «մտանել ի խումբս հաւատացելոց»։

Այս բանադրանաց կոնդակը կարդացուեցաւ 1846 Յունվար 13ին օրը Կ. Պոլսոյ եկեղեցիներուն մէջ։

(2) 1869-1874 տարիներուն հրատարակած է նաև նամակի ձեւով երեք գրքոյկներ ևս, նոյն ոգւով։



Ամերիկացի այս միսիոնարին կը յաջորդեն ուրիշներ։ Կեսարիոյ մէջ 1886ին կային երկու Ամերիկացի Միսիոնարներ որոնք իբր կըրթասէր և հայասէր համբաւ չէին վայելեր (Մասիս, Թ. 3845)։

Կեսարացի Բողոքականները գաւառներու բազմաթիւ քաղաքներու մէջ ապրող այն սակաւաթիւ համայնքներէն մին կը ներկայացնէին որոնք շուտով ձերբազատուած էին միսիոնարներու լուծէն



ՀԱՅ – ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐՈՒ ԺՈՂՈՎԱՐԱՆԸ



ՀԱՅ – ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐՈՒ ԺՈՂՈՎԱՐԱՆԻՆ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ

և կազմած էին ինքնապահ համայնք մը և իրենք կը հոգային իրենց քարոզիչին թոշակը (Նոյն)։

Անոնք 1873ին կառուցած էին գեղեցիկ ժողովարան մը, Գէօյիւք Չէշմէ Թաշին մէջ, մօտը Հայ Կաթոլիկ Ս. Խաչ եկեղեցւոյն։ Ան փոքր և վայելուչ տաճար մըն էր, մասնաւորապէս ուշագրաւ իր յարակից բաժանումներուն կարգուսարքով։ Անոր շրջափակին մէջ կառուցած էին հովիւին համար վայելուչ բնակարան մը և ժողովատեղի մը։

Բողոքականները ունէին նաև քիչ շատ բարեկարգ վարժարան մը, իրենց հասարակութեան տղոց համար։ Անիկա տարրական նախակրթարան մըն էր, ուր դժբախտաբար ուսուցման լեզուն թրքերէնն էր։ Միւս դպրոցներէն իր միակ տարբերութիւնն էր իբր օտար լեզու անգլիերէնին ուսուցումը հասարակ ընթերցանութեան հետ խօսակցութեան քիչ շատ վարժութեամբ։

1886ին Բողոքականներ ունէին նաև երիտասարդներու յատուկ հոգեշինական նպատակով ընկերութիւն մը։

Հայ Բողոքական հովիւներուն մէջ ամէնէն նշանաւորը և յարգելին եղած է **Վեր. Քերովբէ Եագուպեան** որ մօտաւորապէս 50 տարիներ հովուած էր Կեսարիոյ Հայ Աւետարանական համայնքը։ Ծնած էր 1836ին Կեսարիա։ Իր կրթութիւնը ստացած Տոքթ. Համլինի Պէպէքի Գոլէճին մէջ, ուր իրեն դասընկերներն եղած են Հանգ. Բրօֆ. Ալեքսան Պէզճեան, և Վեր. Գ. Շմաւոնեան։ Յետոյ աշակերտած է Էտինպուրկի Աստուածաբանական Համալսարանին, որուն ընթացքը աւարտելէ յետոյ կը դառնայ իր ծննդավայրը ուր կը ձեռնադրուի 1868ին Երէց և 42 տարի անընդհատաբար կը պաշտօնավարէ։

1910ին կը փոխադրուի Եօզղատ, ուր երկու տարի մնալէ յետոյ կը դառնայ նորէն Կեսարիա ուր 3 տարի եւս կ'ստանձէ Աւետարանական իր գործը, զոր կը հարկադրուի շարունակել օգնական քարոզիչներով՝ խոր ծերութեանը պատճառով։

Վեհ. Քերովբէ Եագուպեան Կեսարիոյ ամենազգի բնակչութենէն սիրուած դէմք մըն էր, որ կը վայելէր ամենուն ալ յարգանքը։

1915ի տարագրութեան ատեն, անշուշտ այս պատճառով և ի յարգանս իր ալեւոր տարիքին, կառավարութիւնը զինքն աքսորէ ազատ կացուցած է, բայց իր հօտին, զաւակներուն և պարագաներուն միահամուռ վտարումը խորապէս ընկճեցին զինքը և 1916ին սրտի անհուն մորմոքանօք աւանդեց հոգին՝ ութսունամենի։

Իր որդին էր **Հայկազուն Եագուպեան** (ծն. 1865ին 'ի Կեսարիա) որ Այնթապի «Կեդրոնական Թուրքիոյ Գոլէճ»էն ընթացաւարտ ըլլալէն յետոյ դառնալով իր ծննդավայրը 15 տարի ծառայած էր իբր ուսուցիչ Կեսարիոյ Հայ Բողոքականներու բարձրագոյն վարժարանին մէջ։

1915ին զինքն բաժնելով իր հօրմէն կը խառնեն գաղթականական հոսանքին։ Օսմանիէի մէջ, չտոկալով ճանապարհի դժուարութեանց՝ կը հիւանդանայ և կը կնքէ մահկանացուն։

Թէև պաշտօնապէս քարոզչութիւն ըրած չէ, բայց իր հօրը ծերութեան պատճառով յաճախ անոր դերը կը կատարէր և կը քարոզէր։ Իր պարզ քարոզներով և առաքինի կենցաղով՝ սիրելի և օգտակար եղած է իր համայնքին։



Վեր. Քերովբէ Եագուպեան և իր որդին Հայկազուն Եագուպեան կը պատկանէին Երիցական Եկեղեցիին։

Վեր. Քերովբէ Եագուպեանի 1889 – 1895 գործակցած է ուրիշ պատուելի մը եւս, **Վեր. Արիստակէս Վ. Նուսխէճեան** որ միևնոյն ատեն կը հովուէր նաև Կեսարիոյ «Քիւչիւկ Ոիւրիւ» կոչուած հայ Աւետարանականները։

Վեր. Արիստակէս Վ. Նուսխէճեան ծնած է 1843ին Մարաշ, ուր ստացած իր նախնական կրթութիւնը։ 1863ին ամուսնանալէն յետոյ կը մտնէ Մարաշի ճեմարան-վարժարանը ուր կ'ուսանի 1864-1870ին, միևնոյն ատեն քարոզչութեան պաշտօն վարելով Զէյթուն և Ֆրնուզ։ 1871-1876 քարոզիչ Մարաշի Գ. եկեղեցիին մէջ, ուր կը ձեռնադրուի։ 1877–1880 կը պաշտօնավարէ Մանիսայի մէջ։ 1881–1887 Աֆիոն Գարահիսարի մէջ սեղանաւորութեամբ կ'զբաղի և 1888ին Կ. Պոլիս այցելելով լուսանկարչութիւն կը սորվի և իբր շըրջիկ լուսանկարիչ իր արհեստը գործադրելով կ'անցնի Կեսարիա, ուր ինչպէս ըսի կը պաշտօնավարէ 1889–1895 իբր պատուելի։ 1895–1896 ջարդի շրջանին Կեսարիոյ մէջ իր անվեհեր կեցուածքին և համարձակախօսութեան պատճառով կը պարտաւորուի հեռանալ և երթալ Գահիրէ, ուր տարի մը (1898) քարոզիչի պաշտօն կը վարէ։ 1899ին կ'երթայ Ամերիկա և կը հաստատուի Ֆիլատելֆիա և մասնաւոր հրաւէրով կը քարոզէ Նիւ-Եորք, Պոսթոն եւայլն։ 1904ին թրամվէյի արկածի կը հանդիպի և հինգ տարի տառապելէ ետքը, 1909 Դեկտ. 1ին կը մեռնի Ֆիլատելֆիոյ մէջ (տես Մարաշ, 1934, էջ 560)։



ՎԵՐ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ՆՈՒՍԽԷՃԵԱՆ

Ըստ Գր. Հ. Գալուստեանի, որուն գործէն օգտուեցանք տալու համար Վեր. Արիստակէս Նուսխէճեանի կենսագրութիւնը, անիկա հնարած է Մարաշի անթափ կարմիր ներկը և առեւտրական ընկերութեան մը ծախած կարեւոր գումարի մը փոխարէն՝ ինչպէս նաև սև և կապոյտ ներկեր։ Ըրած է նաև շաքար և սեկ (սախթիյան) պատրաստելու փորձարկութիւններ։

Իբրև պերճախօս քարոզիչ համբաւուած էր մանաւանդ Կեսարիոյ մէջ, ուր Համիտեան ջարդերուն 300է աւելի նահատակները թաղած էր՝ հակառակ խուժանին սպառնալիքներուն և խօսած էր խարանող դամբանական մը։ Հայ Աւետարանականներու թրքերէն երգարանին երգերէն ոմանք իր հեղինակութիւնն են (Մարաշ, էջ 560)։ Ունի բաւական թուով ուրիշ երգեր ալ, որոնց եղանակներ յարմարցուցած էր Սէրայլեան անուն կեսարացի մը և կ'երգէին Կեսարիոյ և Կիլիկիոյ շրջանակներուն մէջ։

Երկու քերթուածներ ալ գրած է Համիտեան ջարդերու տպաւորութեան տակ որոնք Գր. Հ. Գալուստեան իր գործին մէջ արտատպած է (տես Մարաշ, էջ 561)։

Աւետարանականութեան Կեսարիա հաստատութենէն 30 տարի յետոյ, 1886ին բողոքականները 140 տուն էին, այսինքն 800-1000 անձ, և ըստ Վտարանդիին (Մասիս, 1886, թ. 3845) «բաւական պատուաւոր դիրք բռնած են և սիրով են ազգայնոց հետ»։

Տասնեակ մը տարի յետոյ (18°6–1897) սակայն Տրդատ վրդ. Պալեան (տես Հ. Գէլցէր, Համ. Պատմ. Հայոց, էջ 129 կը հաւաստէ թէ անոնց թիւը Կեսարիոյ մէջ 364 էր, երկու սեռէ։ 1902-1903 թուականներուն (Բնաշխարհիկ Բառարան) 1021 անձ կը նշանակէ, իսկ 1915ին տեղահանութենէն առաջ 1300 հոգի կը համարուէին, ինչ որ կը նշանակէ թէ յաջորդ տարիներուն մէջ մեծ զարգացում մը չէին ունեցած։

Ասոր գլխաւոր պատճառն այն էր որ Ամերիկացի միսիոնարները երկար փորձառութենէ մը յետոյ ուղիղ տրամաբանութեամբ մը համոզուած էին թէ Հայ եկեղեցին բարեկարգելու և Հայ ժողովուրդը Աւետարանին պարզ կրօնքին առաջնորդելու ճամբան զայն պառակտելը չէր այլ Հայերը կրթութեամբ և ուսմամբ զարգացնել և լուսաւորել, հետեւաբար նուազ հետամուտ էին զանոնք կրօնափոխ ընելու։

2. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆՆԵՐ ԿԱՄ ԱՒԵՏԻՍԱԿԱՆՆԵՐ.—

Իբր չափազանց ուշագրաւ երեւոյթ մը և իբր Կեսարացի Հայուն աշխոյժ միտքին մէկ յատկանշական արտայայտութիւնը, պէտք է մատնանիշ ընել շարժում մը որ կը նկրտէր կարծես սրբագրել Բողոքականութեան սխալները, բարեկարգելով Հայ Եկեղեցին ներսէն։

Այս շատ զարմանալի և ըսենք նաև ինքնատիպ շարժման հեղինակն էր **Տոք. Աւետիս Երէցեան**, որ ծնած էր 1840ին Եւդոկիա։ Ասիկա 11 տարեկանին որբ մնալով կը ղրկուի Մարզուանի վարժարանը ուր 3 տարի կը յաճախէ։ 1855ին Կ. Պոլիս անցնելով կը մտնէ Համլինի Պէպէքի Գօլէճը ուրկէ ընթացաւարտ կ'ըլլայ 1862ին։ Իր ստացած դաստիարակութիւնը որ խորունկ ներգործութիւն մը ունեցած էր իր վրայ, զինքը կը մղէ դասախօսութեան և քարոզչութեան։

Ուստի 1862էն 1869, եօթը տարի կը շրջի Փոքր Ասիոյ զանազան քաղաքները, Իզմիր, Մանիսա և վերջապէս Կեսարիա, պարապելով դասախօսութեամբ և քարոզչութեամբ միսիոնարներու գործին օժանդակելով։ Սակայն այլեւայլ պատճառներով կը զատուի բողոքականներէն և առանձին քիչ մը ժամանակ առեւտրական գործով կ'զբաղի (Տրդատ վրդ. Պալեան, Հ. Գելցէր, Համ. Պատմ. Հայոց էջ 130)։

1870ին Կեսարիա կը հաստատուի վերջնապէս և հոն կը հիմնէ Լուսաւորչեան ընկերութիւնը իր շուրջը հաւաքած 100-150 մարդով։ Այս ընկերութեան նպատակն էր կիրակի օրերը քարոզչութիւններ ընելով ժողովուրդը լուսաւորել և Աւետարանը ծաւալել։ Ինքն նախագահն էր ընկերութեան և կը կառավարէր զայն։ Այս ընկերութիւնը քիչ յետոյ սակայն Քօմիւնի կասկածանօք թէ՛ ազգէն և թէ՛ Թուրք կառավարութենէն հալածուելով լսարաննին փակուեցաւ։ Պ. Աւետիս Երէցեան ատեն մը Կ. Պոլիս երթալով Խրիմեան Պատրիարքէն կոնդակ մը առաւ և դառնալով Կեսարիա վերակազմեց իր ընկերութիւնը՝ Պատրիարքարանին հաստատութեամբ անունը Ուսումնասիրականի փոխելով (Ց. Գ. Զամուրեան, Մասիս 1883, թ. 3403)։ 1873ին Պ. Աւետիս Երէցեան ընկերութեան ծախքով ղրկուեցաւ Ամերիկա որպէսզի հոն քարոզչութիւն և բժշկութիւն սորվելով դառնայ Կեսարիա։ Արդարեւ 1876ին Ֆիլատելֆիոյ բժշկական համալսարանէն վկայական ստանալէ յետոյ, 1877ին դարձաւ Կեսարիա։ Սակայն Ամերիկայէն դառնալէն յետոյ հաշիւ չտալուն համար գժտութիւն առաջ եկաւ, (Ց. Գ. Զամուրեան, նոյն) սակայն Տոք. Աւետիս Երէցեան հետզհետէ կրցաւ դարձեալ իր շուրջը համախմբել բազմութիւն մը, որ ծարաւի կենդանի խօսքին, կը վազէր զինքը ունկնդրելու ամէն կիրակի։ Միւս կողմէ անիկա կը պարապէր բժշկութեամբ։ Այնպէս որ հակառակ անոր որ իր կազմած ընկերութիւնը հալածուեցաւ իբր բողոքականական ձեռնարկ, սակայն ընկերութեան կազմութենէն 15 տարի և իր Ամերիկայէն վերադարձէն 10 տարի յետոյ 500 անդամ ունէր որոնք ամէն կիրակի իր ժողովատեղին կ'երթային քարոզ լսելու և երգելու։




ՏՈՔԹ. ԱՒԵՏԻՍ ԵՐԷՑԵԱՆ

Տոք. Աւետիս Երէցեանի ձեռնարկը եթէ այս սահմանին մէջ մնար անշուշտ «այնչափ վնաս չունէր, բայց ասիկա այսօրուան օրս նոր բաժանում մը եղած է» (Վտարանդին, Մասիս, թ. 3845), ինչպէս բողոքականութիւնը և կաթոլիկութիւնը։

Այս հաստուածին հետեւողներն ինքզինքնին կը կոչէին Լուսաւորչական» և իրենց աղանդը «Լուսաւորչականութիւն»:

Ուրիշներ զանոնք կը կոչէին «Աւետիսական» և աղանդը «Աւետիսականութիւն», իրենց պետին անունով։

«Սոյն կռիւը վերջնելու համար թէ՛ Առաջնորդն եւ թէ՛ Ազգային ժողովները մեծ եւ ծայրայեղ միջոցներու դիմած են, բայց հետեւանքը միշտ սխալ եւ դառն եղած է, եւ առաջինէն աւելի հաստատուած եւ խոր արմատներ ձգած է» (Վտարանդին, Մասիս, թ. 3845)։

Աւետիսականք ունէին կարծես թէ իբրեւ անջատ համայնք մը իրենց յատուկ աղջիկներու և տղաքներու դպրոցները, ուր 20 տարեկան բողոքական վարժապետ մը կը դասախօսէր 1883ին (Ց. Գ. Ջամուրեան, Մասիս թ. 3403)։ Դժբաղդաբար հայ լեզուն չէր աւանդուեր այդ դպրոցին մէջ։

1886ին անոնք իրենց անդամներէն մին նաև ղրկած էին Եւրոպա որպէս զի հոն կրթուի և դառնալով իրենց վարժապետ ըլլայ։

Նոյն ատեն իրենց վարժուհին ղրկած էին բարձր դպրոց մը, որպէսզի աւելի յարմար ըլլայ իր պաշտօնին (Մասիս, թ. 3845)։

Վտարանդին այս աղանդին վրայ խօսելով կ'ըսէ թէ «օգտակար եղած է Կեսարիոյ, նախ՝ երիտասարդները կ'զգուշացնէ, կ'ըսեն, չարութիւններէ եւ անբարոյականութենէ եւ անոնց սուրբ գիրք կարդալ կը սորվեցնէ, երկրորդ՝ Կեսարացի կիները կրթած է, անոնց ուսուցած է թէ ինչպէս մայրեր պէտք է ըլլալ» (Մասիս թ. 3845)։

Այս կազմակերպութեան գլխաւոր ուժն էր իր նախագահը Տոք. Աւետիս Երէցեան, որ հասցուցած է շատ մը աշակերտներ, որոնք յետոյ դիրքերու հասած են, երկար տարիներ անձնուիրաբար դարմանած է՝ Կեսարացի հիւանդներ, առանց ազգի ու կրօնի խտրութեան, մանաւանդ քոլերայի տարին, որուն ատեն իր թափած գերմարդկային ջանքերն արժանացուցին զինքն պատուանշանի՝ զոր երբէք չկրեց։

Պարզակեաց, ազատամիտ և հեզահամբոյր նկարագրով այս անձը Կեսարացիներու վրայ խորունկ ազդեցութիւն մը թողած էր։

Անիկա կը մոգէր իր պերճախօսութեամբ զինքը մտիկ ընողները։

Իր նշանաբանն էր «Ֆուգար օլուպ բարա գազանմազսան իսէ, միլլէթիմին ախլագընը պէրպատ իտուպ ճան գազանմագ էվլա տըր», այսինքն «վաճառական ըլլալով դրամ վաստկելէն, ազգին բարոյականը բարձրացնելով հոգի շահիլը նախամեծար է»։

Տոք. Աւետիս Երէցեան ունեցած է խստովանական մահ մը ամէն կերպով պատուաբեր իր անունին։ Անիկա դիւցազնօրէն նահատակուած է 18 Նոյ. 1895ին Կեսարիոյ Հայոց կոտորածին օրը, երբ իր բնակարանն ու ինք այրուեցան Թուրք խուժանէն։ Ինքն յաջողեցաւ նոյն օրը բաւական կեանքեր փրկել բայց իրը կորսնցուց։ Այդ հրդեհին զոհ գացին նաև իր ճոխ գրադարանը և իր կրօնական ու գիտական ձեռագիր երկերը։ Իր այս դիւցազնական մահուան առթիւ Վեհ. Արիստակէս Նուսխէճեան, խօսած է դամբանական մը որ մինչև վերջը կը յիշուէր։

Իր մահէն յետոյ շարունակուեցաւ իր գործը, հետեւողներէն, որոնք վարժուած էին առատ տուրք տալու։ Ուստի իր ստեղծած գործը մինչև Ընդհանուր պատերազմ շարունակուեցաւ միայն երկրորդ անգամ մըն ալ անունը փոխելով և կոչուելով «Ինճիլ Ճեմիէթ»ի, այսպէս 1870էն 1915, 45 տարի յարատև գործելով և նպաստելով կրօնական արթնութեան գործին և նոյնքան ալ սակայն բթացնելով միտքը անգիտակ ժողովուրդին որմէ դասակարգ մը մարդիկ, ամէն Կիրակի



առտուընէ մինչև իրիկուն Լուսաւորչական կամ Աւետիսական կրօնական ընկերակցութեան սրահէն Բողոքականներու ժողովարանը և փոխադարձաբար երթալով՝ աղօթքով և քարոզութիւններ մտիկ ընելով ժամանակնին կ'անցնէին։ Այս քարոզութեանց հիմը միմիայն կոյր հաւատքն էր, առանց տրամաբանութեան և հետազօտող գիտական փաստերու։ Ունկնդրող ժողովուրդը տեսակ մը մոլեռանդ դարձած էր, տեսակ մը աղանդաւորներ, ոմանք սրտերնուն մէջ Քրիստոսի բնակիլը, ոմանք ալ նոր հոգի, կրօնական նոր կեանք մը առնելնին «ի ձայն փողոյ և թմբկի» ամէն տեղ և ժամանակ՝ կը խօսէին (Հմմտ. Ն. Ալպպէկեան, Մանզումէի Էֆքեար, թ. 755, 24 Դեկ. 1903)։

Տրդատ եպ. 1897ին կ'ըսէ թէ անոր մահէն յետոյ իր գլուխը հաւաքուած մարդիկը Հայ եկեղեցւոյ յարեցան և այժմ են ու կը մնան ինչպէս առաջ ալ էին (Հ. Գէլցէր, Համ. Պատմ. Հայոց, էջ 130)։ Ոմանք «Աւետիսեան»ները հաշուած են Բողոքականներու հետ և ասոր համար է որ Բողոքականներու թիւը մեծ ցոյց տուած, մինչդեռ այս հատուածը յարանուանութիւն մըն էր ընդմէջ Ազգային Եկեղեցիին և Բողոքական Հայոց։

3. ՀԻՒԼԻՒԼԻՆԵՐ ԿԱՄ ՄՈՒՀԱՊԷԹՃԻՆԵՐ.—

Արդէն Զօմախլուի վրայ խօսուած ատեն ըսի թէ հոն գոյութիւն ունէր աղանդ մը Հիւլիւլիւ անունով (էջ 838-9) որ Աւետիսականութեան նման դիրք մը ունէր հանդէպ Մայրենի Եկեղեցիին, վասնզի անոր հետեւողները երբեք ինքզինքնին անջատուած չէին նկատեր Հայ Եկեղեցիէն։ Այս աղանդը որ «Սիրոյ Ընկերութիւն» ալ կոչուած է 1880-1890ին ծնունդ առած է Կիլիկիոյ մէջ մասնաւորապէս երկու Հայ եկեղեցականներու քարոզութեամբ որոնք էին Ղեւոնդ քհ. Ճէնանեան և Գրիգոր վրդ. Ոսկերիչեան։

Անիկա շատ տարածուած էր Կիլիկիոյ մէջ։ Իր ծագումի պարագաները բաւական հետաքրքրական են (տես Դր. Գալուստեան, Մարաշ, էջ 623-628)։ Այս տեսակ մը աղանդը մտած էր նաև Կեսարիոյ վիճակը և մասնաւորապէս անոր այն շրջանները, որոնք Կիլիկիոյ հետ յարաբերութեան մէջ եղած են, յատկապէս Զօմախլու, ուր անոնք առած են նոր անուն մը՝ Հիւլիւլիւ որուն իմաստը և ծագումը չենք գիտեր։ Շարժումին միակ նպատակն էր ժողովուրդը ապաշխարութեան և մաքուր կենցաղի առաջնորդել, կրօնական արթնութեամբ։

Ասոր մէկ դիմայեղութիւնն էր անշուշտ Սէր անուն միութիւնը որ կազմած էին Բողոքականաց Քուէյքըր (երիցական) աղանդին պատկանող խումբ մը մարդիկ, որոնց մէջ քահանայ ձեւացող անձ մը և կոյս աղջիկ մը կար։

Ասոնք Կեսարիոյ և շրջակայից մէջ կը շրջին, տեսիլք կը տեսնեն, գուշակութիւն կ'ընեն, հիւանդ կը բուժեն և ժողովուրդը գայթակղեցնող ուրիշ բաներ կ'ընեն։ Տրդատ վրդ. Պալեան իմանալով կառավարութեան միջոցաւ Կեսարիայէն արտաքսել կու տայ այս մարդիկը (Փունջ, 6 Փետր. 1888, թ. 2084) և թոյլ չի տար որ այս գայթակղեցուցիչ աղանդը արմատանայ Կեսարիոյ մէջ։

4. ԹԷՍԼԻՄՃԻՆԵՐ ԿԱՄ ՌՈՒՀՃԻՆԵՐ.—

1900ական թուականներու սկիզբը ծագում առնող կրօնական այս շարժումը, որ Կիլիկիոյ մէջ շատ տարածուած էր (Մարաշ, էջ 670-672)

իր ծագման օրերուն պարզ հոգեւոր ժողովներ սարքելով սկսած է։ Անոնց վարդապետութիւնն էր՝ վերստին ծննդեամբ փրկուած քրիստոնեաներ պէտք չէր մեղանչէին, նոյնիսկ անկարող ըլլալու էին մեղանչելու՝ իբրեւ ապացոյց իրենց փրկեալ ըլլալուն։ Անոնց յարող միամիտները նախապէս Կիլիկիոյ շրջանին մէջ կը կոչուէին զուցսէյիթճի (=սրբակենցաղ), յետոյ առին ռուհճի անունը որ իրենք «հոգեւոր» իմաստով կը գործածէին։ Այս վարդապետութիւնը գետին կը գտնէ նաեւ Կեսարիոյ և շրջակայից մէջ, ուր իրենք կ'ստանան Թէսլիմճի անունը եւս։

Անիկա առաջին անգամ կը քարոզուի 1905ին Կեսարիոյ մէջ Վահրամ անուն քարոզիչէ մը, որ Այնթապի Գոլէճի շրջանը աւարտելէ յետոյ Կեսարիա եկած էր իբր ուսուցիչ Բողոքական համայնքին, և անշուշտ քարոզչական բեմին վրայ իրեն անուն մը շինելու փափաքով կը ջանար ստեղծել նոր շարժում մը (Սուրհանդակ, թ. 1902)։

Ինքզինքն կը յայտնէ իբր կատարեալ մաքուր, անսխալ անձ մը, որ իր մէջը կ'զգայ Ս. Հոգին։ Կը յայտարարէր թէ «անով կը խօսիմ, անով կը շարժիմ, անով կը յայտնուիմ, ինչ որ կ'ըսեմ ան կ'ըսէ, ոչ թէ ես, ինչ որ կ'ընեմ՝ անով է որ կը մղուիմ ընելու»։ Այսպէս շատեր կը հրապուրէ և կ'առինքնէ։ Իր հետեւողները ուր որ ըլլային, թէ հաւաքոյթի մը մէջ և թէ փողոցը, յանկարծակի և անակնկալաբար Ս. Գիրքէն բաներ մը կը լպրտէին (Նոյն)։ «Այս նոր աղանդին արձագանգէն քաջալերուած, կ'ըսէ Սուրհանդակի թղթակիցը (թ. 1902), կարգ մը բողոքական խոյս կնիկներ հոս ալ Ս. Հոգիով հաղորդուելու զգայնութիւններ ցուցնելու ճիգեր ըրին, աղօթքի պահուն անակնկալօրէն հեւալով թէ «Ա՜հ, ամա՜ն, պան մը կըսամկայ»:

Բայց պատուելի Դր. Խոմիրեան հերքողական քարոզներով կը պախարակէ այդ գայթակղական գործը։

Պ. Վահրամ կ'այցելէ նաեւ Մունճուսուն, աստուածային թելադրութեամբ իբր թէ, որպէսզի քարոզէ Մունճուսունցիներուն թէ իրենց գիւղը նոր Նինուէ մըն է և ինքն Յովնան մը (Սուրհանդակ, նոյն) և արդարեւ հոն ալ կը յաջողի իրեն հետեւողներ գտնել (Նոյն, թ. 2185)։

Անոնք թեթեւ մոլեռանդներ էին և շատ անգամ ծիծաղելի չափազանցութիւններ ունէին։ Կը պատմուի թէ մէկը կ'այցելէ բողոքական տուն մը, ուր ներկաներէն մէկը սուրճ եփել կը հրամայէ. երկրորդ մը աղիէն յանկարծ կ'ըսէ թէ «չէ, պիտի չեփուի, որովհետեւ իմ մէջէս ոեւէ թելադրութիւն չունեցայ»։ Երրորդ մը զայն հաստատելու համար կը պատասխանէ թէ «Այո՛, պէտք չէ եփել սուրճը»։

Նոյնպէս Մունճուսունէն թղթակից մը (Սուրհանդակ, թ. 2185) գրած է 1906ին թէ ինքն այցելած է «Թէսլիմճի»ութեան աղանդին հեղինակին որ իր բարեւին չէ պատասխանած։ Հետաքրքրուելով երբ պատճառը կը հարցնէ, կը պատասխանէ թէ որովհետեւ «մէջէս չթելադրեց որ զձեզ բարեւէի»։ Այս Պ. Վահրամը, որ այս աղանդին տարածողը եղած է Կեսարիոյ մէջ, հաւանօրէն է **Պատ. Վահրամ Թահմիզճեան**, որ Այնթապցի էր և ուսում ստացած Մարաշի և Այնթապի շրջանակին մէջ, ուր Ռուհճիութեան նախնական որորանը եղած է։

Պատ. Վահրամ Թահմիզճեան յետոյ երկար տարիներ պաշտօնավարած է Զինճի-Տէրէի Ամերիկեան որբանոցը։ Պատ. Թահմիզճեան



տարագրութեան օրերուն Զինճի-Տէրէէն կալանակապ Կեսարիոյ բանտը կը փոխադրուի։ Անխուսափելի էր իր սպաննութիւնն ալ, եթէ ծանօթ և ազդեցիկ Թուրքի մը բարեխօսութիւնը չըլլար։ Իր աքսորականի կեանքը կը վարէ Դամասկոս և Զինադադարէն վերջ կը մեկնի Ամերիկա։

Բ.

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա.

## ՀԱՅԱՑԻ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՌԱՋԻՆ ԾԻԼԵՐԸ

Կեսարիա թէ՛ իբր կեդրոնը քրիստոնեայ հնագոյն և կարեւոր եկեղեցիներէն մէկուն, և թէ՛ իբր Հայաստանի քրիստոնէացման պատճառ շատ խորունկ ազդեցութիւն ունեցած է Հայ կրթութեան և դաստիարակութեան գործին մէջ (տես վերը, էջ 276-289 և 324-331)։ Հայ գիրերու գիւտէն և Քաղքեդոնի ժողովով Հայ և Յոյն տարրերու մէջ առաջ եկած բաժանումէն յետոյ, ծնունդ կ'առնէր հայացի ինքնուրոյն դաստիարակութիւն մը, որուն մէկ աննշան կամ դոյզն հետքը գտնել Հայերով այնքան լեցուն Փոքր Ասիոյ մէջ ընդհանրապէս և Փոքր Հայքի և Կապադովկիոյ մէջ մասնաւորապէս, անկարելին որոնել պիտի ըլլար, վասնզի Օրթոտոքս մոլեռանդութիւնը ներողամիտ աչքով չէր դիտեր հայկական հակաքաղքեդոնիկ ուսուցումը։ Հետեւաբար Կապադովկիա ծնած Հայերը ստիպուած էին ստանալ տիրող Հռոմ-Յունական դաստիարակութիւնը, որ կը կլանէր անշուշտ իր բարձր յատկանիշերով գաղթական Հայերը որոնք հարկադրուած էին համակերպիլ տեղական պայմաններուն։ Սակայն քանի տկարացաւ Բիւզանդիոն, այնքան չեշտուեցաւ Արեւելքի մէջ կրօնական և ազգային ինքնուրոյնութեան և ձերբազատութեան ոգին և եղաւ ատեն մը որ Բիւզանդիոն գէթ քաղաքագիտական նկատումներով տեղի տուաւ, և թոյլատրեց ոչ-քաղքեդոնիկ կղերին ալ գործունէութեան իր երկիրներուն մէջ։ Ուստի հազիւ Ժ. դարուն կարելի եղաւ ցանցառօրէն Հայ եկեղեցիներ և վանքեր հիմնել ստուար Հայ բնակչութիւն պարունակող Փոքր Հայքի և Բիւզանդական պետութեան այլ մասերուն մէջ։ Մասնաւորապէս Հայ վանականներ եթէ կը մղուէին տարածուիլ Բիւզանդական սահմաններուն մէջ, ո՛չ թէ յունադաւան քաղքեդոնականութեան հետեւելու համար է այլ յունական ուսմանց հմտանալու։ Այս յատկանշական շրջանին ուր բազմաթիւ նոր վանքերու հիմնարկութիւնը կը կատարուի, բաւական ապահովութեամբ կրնանք ենթադրել որ Կեսարիոյ շրջակայքն ալ Հայերը փորձած պէտք է ըլլան վանքեր հիմնել և յունական ուսմանց հմտանալ։ Սակայն այդ վանքերը չկրցան անվրդով շարունակել իրենց կեանքը, նախ Օրթոտոքս մոլեռանդութեան կրկին բորբոքումին և ապա բարբարոս ժողովուրդներու վերահաս արշաւանքին պատճառով։ Արդէն յիշած եմ (տես էջ 382-3) թէ ինչպէս Ռոմանոս Ա. Լեկապենոսի (920-944) օրով

«յոյժ բազմութիւնք կրօնաւորաց հալածեալք ի Հոռոմոց աշխարհէն սակս ուղղափառութեան եկեալ յաշխարհն մեր շինեցին յոլով վանորայս» (Վարդան, 86) վկայել ան «հալածեաց զամենայն կրօնաւորս եւ զքահանայս Հայոց որք էին յաշխարհս Հոռոմոց, զի ոչ հաւանեցան դաւանութեան Քաղկեդոնի» (Կիրակոս 47–48)։ Այս վանականները որոնք խոյս կու տային Բիւզանդական երկիրներէն ապահովաբար գէթ մասամբ էին Կապադովկիայէն (տես էջ 383), որ կէս դար յետոյ ապաստան պիտի ըլլար Հայ նախկին թագաւորներուն, Հայ հոգեւոր վերին իշխանութեան, և բազմաթիւ Հայերու, որոնք չէին կրնար քամահած ըլլալ Հայ դաստիարակութեան գործը, որքան որ ալ «եթէ ի ծուլութենէ եւ եթէ յառաջնորդաց մերոց քամահելոյ՝ յարուեստիցս յայս կաղացեալ եմք» և «մերոյս սակաւ ինչ խափանեալ, Յունաց առեալ եւ մերոյս ազգի» այնպիսի ժամանակ մը՝ ուր արաբները այնքան մեծ ջանքեր կը կատարէին «ի վարժարանսն եւ ի դպրոցսն» գիտութեանց բարգաւաճման համար (Գր. Մագիստրոս)։ Գագիկ Բ. Բագրատունին որ կը պարծենար Հոռոմոց առջև թէ «յամենայն կտակարանացն Աստուծոյ հնոյն եւ նորոյն հմուտ եմ» (Ուռ. 195) և իր նոր նստոցին՝ Պիզուի մէջ Ս. Խաչ վանքը կառուցած էր, անկարելի էր որ Հայ կրթութեան կամ ուսման համար կարգադրութիւն մը ըրած չըլլար։ Եթէ ոչ դպրոց գէթ առանձնական ուսուցում պէտք էր ըլլար ԺԱ. դարուն Կապադովկիա համախմբուած հոծ հայութեան մէջ, միայն թէ յիշատակագրութիւններ մեզի հասած չեն։ Նոյնպէս՝ նոյն դարուն երբ Կիլիկիոյ և լերանց վրայ՝ իբր ապահով վայր, արեւելեան բոլոր քրիստոնեայ ազգերու կարգին Հայերը՝ կը հիմնէին իրենց սեփական մենաստանները,—ուրիշ ազգերուն վանքերէն աւելի փայլուն,— անկարելի էր որ Կապադովկիոյ Հայ նոր թագաւորութեանց երկիրներու մէջ ալ հիմնած չըլլային Հայ մենաստաններ։ Արդարեւ Գրիգոր Վկայասէր, որ յաճախ կը բնակէր Սև լերանց վանքերը, «միշտ պարապեալ ընթերցման սուրբ գրոց եւ աստուածախօս աղօթից» (Սիսուան 406), հաւանաբար սիրած է ապրիլ նաև Կապադովկիոյ մէջ, Ծամնդաւ, Թաւբլուր և Մուտուռուսուն, անշուշտ հոն տեղերը գտնուած վանքերու մէջ՝ ըստ Շնորհալիի (Ջամ. 548).

«Զքանի սիրողսն հաւաքեալ
Եւ առ ինքեան բնակեցուցեալ,
Զգիրս հոգւոյն միշտ ընթերցեալ
Եւ ընդ նոսին յար խօսակցեալ»։

Հայ նոր թագաւորութեանց կեանքը շատ երկար չտեւեց դժբախտաբար։ Անոնք աւլուեցան Սելջուկ բարբարոսներու արշաւանքին հետեւանօք և Կեսարիա ինկաւ իսլամ տիրապետութեան տակ որուն ներքև Հայերը պարբերաբար հալածանքներու ենթարկուելով հանդերձ, քիչ շատ բարօրութիւն վայելեցին։ Մասնաւորապէս Սելջուկ Ռումի Սուլթաններու շրջանին Կեսարիոյ Հայերը իբր մօտաւոր դրացիները Կիլիկիոյ Հայ թագաւորութեան երկիրներուն՝ խորունկ ազդեցութիւնը պէտք է կրած ըլլան Կիլիկիոյ մտաւորական փթթումին, որ գերաստիճան ծաղկած էր մասնաւորապէս ԺԳ. դարուն, ուր իբր «հռչակաւոր եւ ականաւոր վանք» կամ «մեծուխս եւ հռչակաւոր անապատ» բարձրագլուխ կը կանգնէր Դրազարկը (Սիսուան, 233) իբր «տեղի իմաստասիրաց եւ ուսումնասիրաց» (Նոյն)։ Հոն կը փայլէին նշանաւոր դէմքեր, ինչպէս Գէորգ Մեղրիկ (†1114) (Ազգապատում, 1347), Կիրակոս վրդ. (†1127), Յովհաննէս Զ. կաթողիկոս, Հեթում Հեղի, Բարսեղ Արքեպ., Յովսէփ Երաժշտապետ (Սիսուան, 233, 517), Սարգիս Պիծակ՝ քաջ նկարիչ (Նոյն 234–6) և այլք։

Կեսարիոյ Հայոց մէջ գործածութիւնը Կիլիկիա գրչագրուած ձեռագիրներու հաստատուած իրողութիւն մըն է (տես վերը, էջ 558–9)։ Նոյնպէս Կեսարիոյ Հայոց առաջին հովիւները՝ Կիլիկիա մարզուած եկեղեցականներ էին։ Ինչպէս տեսանք, առաջին ծանօթ Կեսարիոյ առաջնորդը՝ Յովհաննէս Արքեպ. կը կարծուի ըլլալ «Մեծաբարոյ» փառաւոր տիտղոսով կաթողիկոսը (տես էջ 913), Գրիգոր Ապիրատ՝ նոյնպէս յետոյ կաթողիկոս, Ազարիա եպ. և հուսկ ուրեմն Կոստանդին Արքեպ. Կեսարացի, ամէնքն ալ ապահովաբար Կիլիկիայէն Կեսարիա եկած, անկարելի է որ իրենց հօտը մասնակից ընել աշխատած չըլլան այն ոգեւորեալ շարժման որ ԺԳ. դարուն կը տեսնուի թէ՛ Հայաստանի և թէ՛ Կիլիկիոյ մէջ, թէ՛ ուսուցման մարզին և թէ՛ գրչութեան կամ ընդօրինակութեան գործին մէջ։ Եթէ այս միջոցին ընդհանուր հանգամանք ունեցող շարժում մը գոյութիւն ունեցած չըլլար և նոյնիսկ վրիպումներ պատահած չըլլային վարդապետարաններու անկախ գործունէութեան մէջ Կոստանդին Ա. կաթ. 1221–1267) իր կանոններուն մէջ եպիսկոպոսներուն պիտի չենթարկէր հոգեւոր վարժարանները, որոնց հոգածութիւնը կը համարէ «առաջին գործ» եպիսկոպոսի՝ և կը պատուիրէ որ «զուսուցիչս եւ զուսումնականս ուսման եկեղեցւոյ ինքն սահմանեսցէ մեծաւ հոգաբարձութեամբ» պայման դնելով որ «անզայթակղ եւ գիտունք եւ ուսումնականք ուսուցիչք լինեցին տղայոցն» (Կիրակոս, էջ 169)։

Հաւանակա՞ն չէ ենթադրել թէ Կեսարիոյ Հայ Արքեպիսկոպոսներն ալ իրենց սահմանին մէջ ունէին հոգեւոր դպրոցներ։ Սակայն չեմ ըներ այդ ենթադրութիւնը, քանի որ զօրաւոր փաստ մը չունիմ։ Սակայն անկարելի է ուրանալ կամ ժխտել մտաւորական կեանքի մը գոյութիւնը, ապահովաբար ազդեցութեամբը և ներգործութեամբը Կիլիկիոյ մէջ այդ ժամանակամիջոցին տեսնուած ոգեւորեալ գործունէութեան, որ չէր կրնար անարձագանգ մնալ Կիլիկիոյ սահմաններուն այնքան մօտ գտնուող Կեսարիոյ մէջ, ուր այդ դարուն կը գրուին կարգ մը գրչագիրներ, որոնք անժխտելի փաստերն են մտաւոր կեանքի մը գոյութեան։ Սակայն դպրոցներու գոյութիւնը կասկածելի կը թուի, մանաւանդ ԺԴ. դարէն յետոյ, մինչև ԺԷ. դար, երբ բոլորովին դադրած էր դպրոցական ուսուցումը Հայաստանի հողին վրայ (Հ. Վարդան Հացունի, Դաստիարակութիւնը Հայոց մէջ, էջ 120) և հաւանօրէն բոլոր այն տեղերուն մէջ —ինչպէս Կեսարիա— ուր համանման էին պայմանները։ Այս ժամանակամիջոցին վրայ խօսելով Առաքել Դաւրիժեցին (էջ 221) կ'ըսէ թէ «եպիսկոպոսունքն եւ քահանայքն, տղէտք՝ խոտանք եւ անպիտանք», իրենց բոլոր ժամանակը նուիրած էին գինարբութեանց և դատարկապորտութեան։ «Ոչ բնաւ ընթեռնուին գիրս, այլ էին փակեալ եւ լռեալ մատեանք աստուածայինք... վասնզի էր խափանեալ ընթերցումն սուրբ գրոց, որք էին արհամարհեալ յաչս նոցա, հողով եւ մոխրով լցեալ եւ անկեալ յանկեան ուրեք»։

Ուսմանց սէրը նոյնիսկ պակսած էր վանականներու մէջ, այնպէս որ Գրիգոր Խլաթեցի վարդապետը որ կ'ապրէր ԺԵ. դարուն առաջին քառորդին, սրտնեղած կը հրաժարէր դասախօսութենէ «այլ ոչ պա-

րապետայ, վարդապետական դասի՝ վասն սառնացեալ բարուց ուսումնականաց մերում ազգի» (Հայապատում, 562)։

*Մեծոփեցի ասով կը գուժէ մեր վարժարաններու ընդհանուր անկումը։*

*Կեսարիա որ ԺԴ. դարուն սկիզբէն մինչեւ ԺԵ. դարուն վերջերը* (1300-1478) *կը գտնուէր դժնդակ կացութեան մէջ (տես էջ* 561-586) *անկարելի էր որ կարենար ցոյց տալ մտաւորական և ուսումնական գործունէութիւն։ Արդարեւ այս ժամանակամիջոցին հետքն անգամ չենք գտներ այս տեսակ աշխատանքի մը, թէեւ Հայ ժողովուրդը իր բոլոր կեանքին մէջ, որքան ալ դժնդակ պայմաններու մէջ գտնուած ըլլայ, ջանացած է ոեւէ կերպով ապահովել տեւականութիւնը իր մտաւոր կեանքին։*

## Բ.

## ԸՆԹԵՐՑՈՒՄ ԵՒ ԳՐՉՈՒԹԻՒՆ

*Մտաւորական կեանքի առաջին սնունդը ընթերցումն է, որուն նիւթը կը կազմէ գիրքը, որ հին ժամանակներու մէջ այսօրուան պէս՝ շնորհիւ տպագրութեան գիւտին, մատչելի չէր ժողովուրդին։ Ինչ որ այսօր տպարանները՝ այնքան առատօրէն կ՚արտադրեն, մէկ անգամէն հազարաւոր օրինակներ տալով, հին դարերու մէջ ձեռքով ու համբերատար աշխատութեամբ կատարուած ընդօրինակութիւններով միայն պիտի հայթայթուէր,* գրիչներու կամ ընդօրինակողներու *տարիներու աշխատութեամբ։ Հետեւաբար ընթերցման նիւթը՝ գիրքը՝ հազուագիւտ և զայն արտագրելու միջոցները՝ տաժանելի էին։*

*Բայց այդ բոլոր դժուարութիւնները պէտք էր յանձն առնել ապահովելու համար Ս. Մեսրոպի գիրի գիւտով հետապնդած նպատակը, նախ Ս. Գիրքը մատչելի դարձնելու և Եկեղեցւոյ պաշտամանց հայերէնով կատարումը, ինչպէս նաեւ կրօնքի և ազգութեան ամրապնդման համար հեղինակուած կամ թարգմանուած գործերու ընթերցումը՝ ապահովելու համար։ Ուստի գրչութեան արուեստը Ե. դարէն սկսեալ ընդհանուր տարածուեցաւ ուր որ Հայ վանք մը կամ դպրոց մը կար։ Զ. դարուն Հայ վանական մը՝ Յովսիա կը գրէ թէ ձեռագրական աշխատանքի կողմէ նշանաւոր եղած էր Վանգոյի վանքը (Արշարունեաց գաւառի մէջ) ուր* 36 *վարդապետներ* «զգրչութեան արուեստն ունէին եւ զսուրբ գիրս յօրինէին», *անշուշտ* Վայելչագրութեան *հետամուտ ըլլալով միանգամայն (Եղիշէ Պատր. Դուրեան,* Պատմ. Հայ Մատենագրութեան, *էջ* 67-68)։ *Յաջորդ դարերուն հետզհետէ զարգացաւ այս արուեստը, որ Կիլիկեան շրջանին ստացաւ գեղարուեստական զարգացում մը, արքունիքին և վանքերուն մէջ, գրիչներու և ընդօրինակողներու առընթեր երեւան գալով* Նկարիչներ *(ծաղկող, ոսկող) որոնք աւելի ճոխութիւն կու տային ձեռագիրներուն (Նոյն, էջ* 71)։

*Կեսարիոյ մէջ ԺԱ. դարէն յետոյ երբ հայացի դաստիարակութեան կամ Հայ կրօնի ազատ ուսուցման և պաշտամունքի արգելքները կը վերնային, և իր մօտը՝ Կիլիկիոյ մէջ այնքան բեղուն գործունէութիւն մը կը նշմարուէր գրչութեան մարզին մէջ, բնական է Կեսարիա ալ գոնէ համեստ սահմանի մէջ հետեւէր Կիլիկիոյ օրինակին և հոն ալ գրչագրուէին ձեռագիրներ։ Կեսարիոյ մէջ գրուած*



*առաջին ծանօթ ձեռագիրն*(1) *է Աւետարան մը, գրուած* 1191*ին (հիմա Նոր-Ջուղա) Գէորգ քհ.ին ձեռքով։ Իսկ երկրորդն է* 1206*ին Թումարզացի Գրիգոր քհ.ի գրած Աւետարանը՝ Ս. Կարապետի վանքին մէջ։*

*Այսպէս ԺԲ. դարուն վերջերը և ԺԳ. դարուն սկիզբները, առաջին անգամ երեւան կու գան Կեսարիա գրուած ձեռագիրներ, հաւանօրէն Կիլիկիոյ վանքերէն հոն փոխադրուած գրիչներու կամ գրչապետներու ղեկավարութեամբ, որոնցմէ մէկն էր նաեւ թերեւս Մելիտինեցի Վասիլ* «դպրապետ» *որուն* 1226*ին Կեսարիոյ մէջ գրչագրած Յունարէն Աւետարանի վրայ խօսելու առիթը ունեցայ (էջ* 543), *բոլորովին տարբեր անկիւնէ մը դիտելով և զայն Հայ-Հոռոմ համարելով, մինչ կարելի է ենթադրել նաեւ թէ անիկա Հայ մըն էր որ յատկապէս յունարէն լեզուն սորված էր, ծանօթանալու համար յոյն կրօնական գրուածներու։ Ենթադրութիւն որ որքան ալ նուազ հաւանական ըլլայ կարելի չէ վճռաբար ժխտել։*

*Ասոնք սակայն իբր անկապ գործեր, չեն տար մեզի որոշ ապացոյց թէ անպատճառ Կիլիկեան ազդեցութեամբ երեւան եկած են։ Յայտնի ու բացայայտ կապակցութիւնը Կիլիկիոյ վանքերուն մէջ ծաղկած արուեստին ՚ի Կեսարիա գտած արձագանգին երեւան կու գայ Կոստանդին Կեսարացիի առաջնորդութեան ատեն* (1274-1307)։ *Ան եթէ Դրազարկի աշակերտ չէր, ապահովաբար ուրիշ Կիլիկեան վանքի մը մէջ պէտք է ուսած ըլլար, բազմաթիւ ապացոյցներէն միայն մէկը՝ իր լատինամիտ ուղղութիւնը նկատի ունենալով։ Ան ո՛չ անարժէք մէկն էր և ո՛չ ալ տգէտ մը՝ նկատի առնելով իրեն վստահուած փափուկ պաշտօնները, և այն փութկոտութիւնը որ ցոյց կու տայ գոհացում տալու համար իր ժամանակին ամէնէն ականաւոր մտաւորականներէն մէկուն՝ Եսայի Նչեցիին, որ* «վարժապետ» *տիտղոսով կը պանծար։ Հետեւաբար զարմանալի չէ երբ իր հովանաւորութեան տակ և իր քաջալերութեամբ Կեսարիոյ մէջ կը գործեն գրիչներ, ինչպէս Սահակ քհ. Աւորին* (1274) *և Վարդան* (1299)։ *Ասոնցմէ առաջինը որ իր իսկ խնդրանքով գրած է Աստուածաշունչին մէկ մասը* (1274), *ուշագրաւ երեւոյթ մը առջեւ կը դնէ մեզի։ Աւորի այս քհ.ն շատ հաւանական է որ իր Հայ կրթութիւնը ստացած է Կիլիկիոյ մէջ և հոն սորված է Հայ գրչութիւնը, վասնզի երբեք Աւորի բնակչութեան խօսք չէ եղած Կեսարիոյ մէջ, մինչ Աւորիք Կիլիկիոյ մէջ բազմաթիւ էին և նոյնիսկ կը յիշուի թէ Աւորւոց կաթողիկոսութիւնը ապաստան գտած էր* 1244*ին Սիս, Իգնատիոս Պատրիարքի նախաձեռնութեամբ։ Աւորիք հոն ունէին Ս. Աստուածածին եկեղեցին — որ* 1266*ի աւերման ատեն անվնաս մնացած էր —, և Ս. Պարսամի տաճարը՝ որ կառուցած էր Եգեսայի մեծ բժիշկ Իսա։ Աւորիք Սիսի անմիջապէս մօտը ունէին նաեւ երեք վանքեր* (Միսուան, 221-222)։

*Աւորւոց և Հայոց դաւանական նոյնութիւնը նկատի առնելով ա-*

---

(1) *Հատորիս վերջը՝ Կեսարիա գրչագրեալ մեզի ծանօթ ձեռագիրներու յիշատակարանները թուականի կարգով դասաւորուած են։ Անոնք ատաղձները կը կազմեն իմ տեսութիւններուս։ Խուսափելու համար կրկնութենէ կարելի եղածին չափ զգուշացած եմ մէջ բերումէ, հետաքրքիրներուն թողլով անձամբ ճշգել այն եզրակացութիւնները որոնք ես հանած եմ անոնցմէ։*

պահովաբար Հայ թագաւորութեան մայրաքաղաքին մէջ տեղաւոր-ւած Ասորի հաստատութեանց մէջ շատ մը Ասորիներ Հայ լեզուի ծա-նօթութիւնն ալ կ'ստանային և անոնցմէ ոմանք Կիլիկիոյ մէջ Շնոր-հալիներու և Լամբրոնացիներու նման դէմքերու կողմէ մշակուած գրականութեան և այլոց կողմէ կատարուած Ս. Գրոց մեկնաբանու-թեան նուիրուած աշխատութեանց ծանօթանալու ջանքեր կը կատա-րէին։ Ասոնցմէ մէկն էր ապահովաբար Սահակ Ասորի քահանան որուն Կոստանդին Կեսարացի կա՛մ Կիլիկիոյ մէջ Աստուածաշունչ գրել յանձ-նարարած էր կա՛մ միասին Կեսարիա տանելով հոն աշխատցուցած։

Հաւանօրէն նոյնպէս Կիլիկիա՝ գրչութեան արուեստին մէջ մար-զըւած գրիչ մը պիտի ըլլայ նաև Վարդան որ յատկապէս «ի պէտս տր. Կոստանդին արհի եպիսկոպոսի» ընդօրինակած է Գէորգ Սկեւռացիի «Մեկնութիւն Մարգարէին Եսայեայ» գործը, որուն ծանօթանալ փափա-քած էր Եսայի Նչեցի երբ Կոստանդինի պատահած էր Հայաստան, և ան յատկապէս գրել տալով յղած էր (տես վերը 913)։

Իսկ իրեն ժամանակակից կը յայտնուին ուրիշ երկու գրիչներ, երկուքն ալ քահանայ։ Առաջինն է անոնց՝ Յովհաննէս, որ 1275ին Անտիոքի մէջ սկսած Ոսկեփորիկը կ'աւարտէ նոյն տարին Կեսարիոյ մէջ։ Ինչպէս կը տեսնուի այս գրիչը անվրէպ՝ Կիլիկեցի մըն է։ Միւսը՝ Յովսէփ քհ. 1277ին Աւետարան մը կը գրէ Կեսարիոյ մէջ, «'ի դառն ժամանակի»։ Այս քահանան որ որդին էր Պիպարսի արշաւանքին ա-տեն (էջ 521 և 560) նահատակուած Տ. Նահապետ քհ.ի, այս խառնա-կութիւններէն խոյս տալու համար կ'ապաստանի Այաշ ուր ինքն ալ կը նահատակուի 1282 Դեկտ. 22ին։

Նշանակելի է որ այս քահանան իր ժամանակին կաթողիկոսը և Հայոց թագաւորը կը յիշէ սակայն Կեսարիոյ եպիսկոպոսին՝ Կոստան-դինի անունը չի տար, հաւանօրէն պատկանելով անոր հակառակ դպրոցին, այսինքն արեւելեան կղերին կամ Ազգային Եկեղեցւոյ հաւատարիմ հատուածին, որ թերեւս Արեւելքէն եկած գրիչէ մը սորված էր գրչութեան արուեստը որուն զարկ տալ աշխատած է Կոստանդին եպ. Կեսարացի նոյնիսկ հաւանօրէն Կիլիկիայէն իր հետ տարած գրիչներու ձեռամբ։

Սակայն այդ շարժումը արմատ չի կրնար բռնել, վասնզի անոր աղբիւր և սնուցիչ, Կիլիկիոյ մէջ փթթող մտաւորական փայլուն շարժումը, կը կասի, երբ հետեւանք քաղաքական իրադարձութեանց և բարբարոս ժողովուրդներու շարունակական արշաւանքին և կրօ-նական պայքարներուն որոնք կը պառակտէին Հայ ազգը, 'ի վերջոյ պատճառ տալով իր քաղաքական անկախութեան կորուստին (1375) և իր գերութեան։ ԺԴ. դարը անշքացման և անկման շրջան մը կ'ըլլայ հետեւաբար և Կեսարիա որ այդ շրջանին ինքն ալ մատնուած էր դժըն-դակ կացութեան մը (տես էջ 561-586) և երբ միջավայր՝ զրկուած՝ խա-ղաղութենէ, չի կրնար սնուցանել իր մէջ ոեւէ մտաւորական կեանք։ Այնպէս որ, ինչպէս դիտել տրուած է արդէն (էջ 586) ԺԴ. և ԺԵ. դա-րերուն ոչ մէկ հետք կը գտնենք հոն գրչագրական աշխատութեան։

Սակայն երբ Օսմ. տիրապետութենէն յետոյ Հայերը դարձեալ հաւաքուիլ և խտանալ սկսան Կեսարիոյ մէջ, իրենց եկեղեցական և հանրային կեանքին հետ հոգածու եղան նաև իրենց մտա-ւորական կեանքին և վանքերու մէջ ուսումնական կեանքի հիմերը



գրին։ Այս շարժման հետ զուգընթաց երեւան եկան գրչագրական աշխատութիւններ թէ՛ վանքերու մէջ և թէ անոնցմէ դուրս։ Այսպէս Ս. Գրիգոր Նիւսացիի վանքին մէջ 1478էն 1498 ծաղկեցաւ Երզնկացի Նա-ղաշ Յովհաննէս գրիչը որ գիտէր գրչութեան հետ նաև զարդանկար-չութիւն և ոսկեզօծել։ Անիկա աշակերտն էր Սամուէլ և Պետրոս կու-սակրօն աբեղաներու, որոնց ո՞ւր ծաղկած ըլլալը չենք գիտեր, սա-կայն կը կարծենք թէ պէտք է ապրած ըլլան Նիւսացիին վանքը, քանի որ Յովհաննէս թէպէտև Երզնկացի՝ դիպուածով Կեսարիա ին-կած մէկը ըլլալ չի թուիր, անցորդ պանդուխտ մը չէ, այլ ամբողջ ընտանեօք Կեսարիա է։ Իր եղբօր դուստրը՝ Դոհար և անոր աղջիկը՝ Մալխաթուն իրեն հետ են և նոյնիսկ կը գործակցին իրեն, իրենք ալ ծանօթ ըլլալով արուեստին։ Հետեւաբար հաւանօրէն հոս տեղւոյն վրայ պէտք է ուսած ըլլայ։

Բայց ինչ որ աւելի նշանակելի է, սա է որ անիկա ունեցած է մէկէ աւելի աշակերտներ, այսպէս Ստեփանոս գրիչ (1481) Աստուա-ծատուր և Թորոս սարկաւագները (1484) և Ներսէս քհ.(1) այնպէս որ իրմով 1478ին ծնունդ առած շարժումը կ'ապրի մինչև 1535, իր աշակերտ-ներուն միջոցաւ։ Հետեւաբար ԺԵ. դարուն երկրորդ կէսէն մինչև ԺԶ. դա-րուն կէսերը, Կեսարիոյ շրջանին մէջ մտաւորական շարժման օրրա-նը կը հանդիսանար Ս. Գր. Նիւսացիի վանքը, գլխաւոր դէմքը ըլլա-լով Յովհաննէս Նաղաշ Երզնկացին։

Այս վանքին մէջ հաստատուած և հոն ուսած գրիչներուն ժամա-նակակից, Կեսարիոյ շրջանակին մէջ կ'երեւան և հոն ձեռագիրներ կը գրեն, հաւանօրէն ուրիշ տեղեր պատրաստուած գրիչներ եւս։

Այս կարգի գրիչ մըն էր ապահովաբար Յովհաննէս Աբեղայ, որ 1495ին Մանճըլըխի մէջ ձեռագիր մը գրած է։ Ան աշակերտն էր Առաքել Աբեղայի մը, որ հեռու կը գտնուէր ապահովաբար, վասնզի ինչպէս կը հասկցուի գրիչը՝ եկւոր մըն է Մանճըլըխ՝ ուր իր լաւ ըն-դունուած, մեծարուած և պատուած ըլլալուն վրայ կը խօսի։

Նոյնպէս՝ Մովսէս քհ. գծող կամ գրիչ, որ Թոմարզայի մէջ 1516ին կը կազմէ Սիս գրուած (1222ին) Աւետարան մը և 1545ին՝ Կեսարիա գրուած Կիպրիանոս մը և 1532ին կը գրէ Թոմարզայի մերձակայ Ջեւըլի գիւղին մէջ Մաշթոց մը։

Այս գրիչները նշոյլները կամ կայծկլտումներն են կրթական կամ ուսումնական հեռաւոր վառարաններու որոնք հազիւ իրենց անձուկ շրջանակին մէջ ջերմութիւն կրնային ստեղծել, վասնզի հազիւ թէ անոնք բոցավառուած էին եռանդովը մի քանի դէմքերու որոնք առաջնորդուած էին Հայ եկեղեցին վերակազմելու նպատակով։

Այդ վերակազմութեան առաջին հիմնաքարերը կ'ըլլային ԺԵ. դա-րուն կէսերը Ամենայն Հայոց կաթողիկոսութեան իր նախկին բնա-

(1) Ներսէս քհ. վարպետ մըն է իբր գրիչ, ինչպէս ծաղկա-րար, նկարիչ և կազմող։ Իր գրչութեամբ մեզի հասած ձեռագիրները իրենց շքեղութեամբ նշանաւոր են։ Ներսէս քհ. որդին է Յովհաննէս քհ.ի և կնոջ Տօլլաթի։ Եղբայրներն են Աստուածատուր եպ., Բար-ման և Հայրապետ։ Հաւանականութիւն մը կայ Աստուածատուր եպ.ը և Յովհաննէս Նաղաշի աշակերտ՝ համանուն սարկաւագը նոյն անձերը ենթադրելու։

կավայրը՝ Ս. Էջմիածին դարձուիլը (1441) և քանի մը վանքերու մէջ դասարաններու կամ կրթարաններու հաստատուիլը։ Այսպէս ԺԵ. դարուն Սուխարա ուխտին մէջ կը գտնենք երկու «Մեծ վարդապետք» Սարգիս և Վարդան՝ «երկոտասան ընկերօք» որոնք կ'ուսուցանէին «զչորս եղանակս վարդապետական» (Զարբհանէլեան, Պատ. Հայ. Դպ. Նոր մատենագր. 1905, էջ 123)։ Նոյն աստիճան զարգացում մը կու տար պաշտօնաբար նաեւ Վարդան աշխարհագրի «աթոռ եւ վարժարան սուրբ վարդապետաց մերոց» կոչուած Գլաձորի վանքը, Արտազի Թադէի մենաստանին մէջ Մեսրոպ վրդ.ի ձեռամբ բացուած «Լսարան»ը կամ «Ուսումնարան»ը, և Արճէշի Մեծոփայ վանքը՝ ուր Թովմաս Մեծոփեցի պատմագիրը «վաթսուն ամ... կացեալ բազումս ջանիւ եւ առաքինութեամբ եւ երեսուն եւ հինգ ամ դաս ասելով ամենայն անձանց գրոց աշակերտելոց» և Սեպուհ լերան Կայիփոսի վանքն որ «լսարան» և «Համալսարան» կոչումներով կը յիշատակուի (տես Արարատ 1913, էջ 596) Համշէնցի Յովհաննէս վարդապետի († 1497) ուսուցչութեամբ դառնալով նշանաւոր կեդրոնավայր մը ուսման և գիտութեան։ Հոն կ'աշակերտին բազմաթիւ աշակերտներ՝ հաւաքուած զանազան երկիրներէն, մինչեւ Կաֆայէն, Տիվրիկէն, Սեբաստիայէն, Հաղբատէն և Պոնտոսէն։ Առ ոտս Սիւնեաց դպրոցին աշակերտ այս «տիեզերալոյս... հայր հոգեւորի» (Դաւ. 396) ուսում առնելու կը փութան նաեւ Ասորիներ (Արարատ, 1913, էջ 600-603)։

Նշանաւոր էր նաև Բաղէշի քիւրտ կէս-անկախ իշխանութեան սահմաններուն մէջ գտնուող Ամրտոլու վանքը, ուր «ի հին եւ ի վաղեմի ժամանակաց կար դասատուն վարդապետաց... որ յաջորդելով մի զմի եկաս մինչեւ» ԺԷ. դարուն սկիզբը, երբ նոր փայլ մը ստացաւ ջանքերովը Բարսեղ վրդ. Գաւառցիի († 1615) որ «ի գաւազանէն՝ որ ի Տաթեւացւոց յառաջ եկեալ եւ սերեալ» էր «այր երեւելի եւ մեծանուն»։

Բարսեղ որ էր «յոլով աշակերտաց տէր», իր դասատան մէջ ճանչցուց անոնց «արտաքին գիտութիւնները»։

Ժամանակակից յիշատակարաններ ցոյց կու տան թէ ԺԶ. դարու վերջերը կային տակաւին ուրիշ վանքեր որոնց մէջ կը դասախօսէին անուանի վարդապետներ։ Այսպէս Վարագայ վանքին մէջ կը յիշուի «տարեգիր» Բարսեղ վրդ. Աւանցի, որ էր քեռորդին և աշակերտ անուանի «Ջալալ» Կարապետ վրդ. Արարքցիի (ՀԱ. 1910, էջ 65-79)։

Նոյնպէս Կ. Պոլսոյ մէջ նախաքայլերը կ'առնուին։ Յիշատակարան մը կը վկայէ թէ 1590-1600 թուականներուն «երեք վարդապետք ի Ստամպօլ քաղաքի Յակոբ Ջէյթունցին... Մաղաքիա վրդ. Թոխաթցի... եւ Զաքարիա վրդ. Վանեցի» դաս կու տային և «էր Ստամպօլ քաղաք իբրեւ զերկինս եւ կամ ժամանակ Կոստանդիանոսի եւ զթարգմանչացն» (ՀԱ. 1910, էջ 65-79)։

Դարձեալ այն ժամանակները իրենց ուսումնական ջանքերով ուշագրաւ կը հանդիսանային Ստեփանոս Սալմաստեցի և Միքայէլ Սեբաստացի՝ Էջմիածնայ և Գրիգորիս Աղթամարցի՝ Աղթամարայ կաթողիկոսները, Մաղաքիա Դերջանցի վարդապետը, և մանաւանդ «մեծ վարդապետ» և «գլուխ ամենայն վարդապետաց ժամանակին» Ղուկաս Կեղեցի կամ Խորձենացի րաբունապետ վարդապետը († 1602) և անոր եղբայրը՝ Մարկոս վրդ.ը, որոնք յատուկ աշակերտութիւն մըն ալ կազմած էին, ինչպէս նաև Սիմէոն վրդ. Ապարանցի որ հաւաքուցած էր հոյլ մը աշակերտներ, որոնց մէջ ուշագրաւ էր Սահակ «վարդապետաց վարդապետ» մականուանեալը, և Վարագի վանահայրը՝ Մարգար Պարոնտէր եպ.ը, իր բազմաթիւ աշակերտներովը։



Նոյնպէս լեռնային Կիլիկիոյ մէջ, ուր Հայք կ'ապրէին, անմատոյց կատարներ ապաստանած՝ գրեթէ անկախ, հաւանօրէն կը գործէին վարդապետներ որոնք կ'ուսուցանէին իրենց շուրջը հաւաքուած աշակերտներուն։

Բոլոր այս ուսումնական վարդապետներն ու իրենց դասատունները՝ մեծագոյն մասամբ արդիւնք Սիւնեաց դպրոցին, զանազան չափով դեր կատարեցին Հայ քաղաքակրթութեան պատմութեան մէջ։ Այս զարթնումը ժամանակի նշան մըն էր որ օր է օր աւելի կ'ընդարձակուէր և կը տարածուէր։

Սիւնեաց անշքացած դպրոցը՝ որմէ ծլած ոստեր կը գործէին այլուր, ինքն ալ 1608-1610ին վերստին կը կազմակերպուէր և կը նորոգուէր «Մեծ Անապատ» անունին տակ, նախաձեռնութեամբ Սարգիս եպ. Սաղմոսավանեցիի և Տրապիզոնցի կամաւոր աղքատին՝ Տէր Կիրակոսի (Ազգապատում, էջ 2342-9)։ Կեսարիա իբր հայաբնակ կեդրոն մը բոլորովին անհաղորդ չէր կրնար մնալ այս շարժման։ Այս վարդապետարաններու կամ մեծ վարդապետներու աշակերտներէն դէմքեր անպատճառ պէտք էր որ իրենց գործունէութեան շրջանակը տարածած ըլլային նաև մինչև Կապադովկիա։

Արդարև ԺԶ. դարուն հոն երեւան կու գան երկու կարկառուն դէմքեր, որոնք էին Աստուածատուր եպ. Տարօնեցի կամ Մշեցի և Յովհաննէս եպ. Հզնեցի (տես էջ 967) որոնք գրեթէ միաժամանակ ԺԶ. դարուն կէսերը, կ'երեւան Կեսարիոյ շրջանակին մէջ և հոն մտաւորական կեանք մը կ'ստեղծեն Ս. Կարապետի և Թոմարզայի Ս. Աստուածածին վանքերուն մէջ, միեւնոյն ատեն մղում տալով գրչութեան։

Աստուածատուր եպ. Մշեցիի ծննդավայրը՝ Արեւելքը մատնանիշ կ'ընէ իբր իր ուսման վայր, իսկ իր ուսուցիչները՝ Խաչատուր վրդ. «երաժիշտ» և Մակար վրդ. «գրչապետ», մեզի Կիլիկիա կ'առաջնորդեն, վասնզի պատմութենէն ծանօթ է Ուլնեցի Խաչատուր «երաժիշտ» կաթողիկոսը (1560-1584) որ Զէյթունի մէջ պատրաստուած եկեղեցական մըն էր, իսկ Յովհաննէս եպ. Հզնեցի, կը թուի պատկանիլ Ղուկաս Կեղեցիի կամ անոր մեծագոյն աշակերտին՝ Սրապիոն Ուռհայեցիի դպրոցին (տես էջ 967)։

Աստուածատուր եպ. որ 1552էն սկսեալ կը յիշուի իբր ուսուցիչ, գործած է նախ Ս. Կարապետի (1553), յետոյ Սեբաստիոյ Ս. Նշան, խնձորի Ս. Աստուածածին (1562) վանքերուն մէջ և հուսկ ապա Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին մէջ, —որուն յետոյ Առաջնորդն ալ եղած է (1580-1582)— և վերջապէս Երուսաղէմ, ուր կը վախճանի։

Կեսարիոյ շրջանակին մէջ այս եպիսկոպոսը՝ հասուցած է իբր դպիր կամ գրիչ աշակերտներ որոնցմէ մեզի ծանօթ են 1. Պօղոս Քաստողանցի (1552-53), 2. Խաբլան Խարիոր Էլիֆի անուն Գրիգոր կոչի (1570) և 3. Գրիգոր քհ. (1572-1588) և թերեւս ուրիշ շատեր որոնք չեն յիշուած և կամ իրենք զանց առած են յիշել իրենց ուսուցիչը։

Աստուածատուր եպ. Տարօնեցիի և Յովհաննէս եպ. Հզնեցիի գործունէութեան շրջանին, այսինքն ԺԶ. դարուն երկրորդ կէսին, նաև կը գրեն.

1. Ստեփանոս քհ. 1555ին Աւետարան 'ի Կեսարիա,
2. Գաբրիէլ սարկ. Մարաշցի 1557ին Աւետարան 'ի Կեսարիա,
3. Յակոբ քհ. 1560ին Արիստոտէլի Ստորագրութիւն 'ի Ս. Կարապետ,
4. Աստուածատուր քհ. 1596ին Քարոզգիրք 'ի Կեսարիա,
5. Յովհաննէս գրիչ 1597ին Շարական 'ի Կասի,
6. Գրիգոր քհ. 1601ին Պատմագիրք 'ի Կեսարիա,
7. Յովհաննէս քհ. 1602ին Աւետարան 'ի Կեսարիա։

Այս գրիչները թէև յայտնի չէ թէ ո՞ւր պատրաստուած են, սակայն Կեսարիոյ մէջ տեսնուած շարժումը մանաւորապէս Կիլիկեան լեռնադաւառներու մէջ ապաստանած մի քանի կեդրոններու մանաւորապէս Զէյթունի մէջ տեսնուած շարժումին անդրադարձումը ըլլալ կը թուի, վասնզի Յակոբ քհ.ի 1560ին գրչագրած ձեռագիրը՝ Սմբատ Գունդստապլի և Յովհաննէսի 1597ի ընդօրինակած Շարականը՝ Խըլկցի օրինակէն ըլլալը Կիլիկիան մատնանիշ կ'ընեն իբր անոնց վարժութեան վայր, իսկ Գաբրիէլ Մարաշցի, հոն իսկ ծնած և գործած է(1)։

Արդարև այդ ժամանակամիջոցին արդէն ԺԶ. դարուն յեռնային Կիլիկիոյ մէջ ծաղկիլ ու բարգաւաճիլ սկսած դպրոցը նոր զարգացում մը կամ փայլ մը կ'ստանար Սիւնեաց դպրոցին մեծ աշակերտներէն րաբունապետ Ղուկաս վրդ. Կեղեցիի աշակերտներուն ջանքերովը։ Անոնցմէ մին էր Պետրոս Կառկառեցի որ Կիլիկիոյ մէջ հաստատած էր վարդապետարան մը՝ ուրկէ հասած էր Ազարիա կաթողիկոս Կիլիկիոյ «աւագ վարդապետն ժամանակին», որուն աշակերտներէն էր Յակոբ վրդ. Զէյթունցի՝ որ Թոմարզայի վանքին մէջ գործեց ինչպէս տեսանք (էջ 968)։ Անշուշտ այս վարդապետարանին գործունէութեան ակնարկելով է որ յիշատակարան մը կ'ըսէ թէ ան Սիսի աթոռին անգին զարդուց և կահից առիթ եղած էր, մանաւանդ անգին մատենից եւ գրեանց (Տաշեան, Մայր Ցուցակ, 359)։

Այս վարդապետարանին մօտ՝ Զէյթունի մէջ դարձեալ նոյն Ղուկաս րաբունապետին և իր եղբօրը՝ Մարկոս վրդ. Կեղեցիի աշակերտութենէն Զէյթունցի Վահան երէց «գրչապետին» շուրջը հաւաքուած էին բազմաթիւ աշակերտներ(2) որոնք ինչպէս ինքն, շատ մը ձեռագիրներ արտադրած են։ Վահան երէց Զէյթունցի որ գրչութեան արուեստը սորված էր Սարգիս վարպետ Հիզանցիէն կամ Երզնկացիէն (Արտաւազդ եպ. Սիւրմէեան, Ցուցակ Ձեռագ. Հալէպի, էջ 29) գրած էր մեծ թուով ձեռագիրներ 1580-1630ի ատենները։

Իր մէկ զաւակն էր «Գրիգոր վարդապետ Աստուածաբան եւ երջանիկ **րաբունապետ**» «յոգնահանճար եւ բազմաբեղուն ծնունդ, խոհեմն իմացականութեամբ եւ կատարեալ իմաստութեամբ» (Միսուան, 186 և 536), որ յետոյ եղած է Զէյթունի Առաջնորդ և իր հօրը Վահան քհ. Զէյթունցի քաջ քարտուղարին գործը շարունակած է և իր կարգին զարկ տուած՝ Զէյթունի մէջ գրչագրական աշխատութիւններու։ Գրիգոր եպ. մեռած է 1663ին (Տրդատ եպ. Պալեան, Ցուցակ ձեռագրաց 'ի Թուրքիա, էջ 56-57)։ Վահան երէցի միւս զաւակն էր Աւետիս երէց՝ որուն որդին Յովհաննէս երէց իր հօրեղբօրը՝ Գրիգոր եպ.ի առաջնորդութեան շրջանին գրչագրութեամբ զբաղած է, արուեստը սորվելով իր պապին՝ Վահան երէց գրչապետին՝ երկու աշակերտներերէն՝ Յովհան երէցէն և Յովհաննէս երէցէն (Նոյն)։ Վահան երէց ունէր երեք եղբայրներ, Ստեփանոս քհ., Կոստանդին և Ներսէս (Ցուցակ Հալէպի, էջ 29) որուն վերջինը յետոյ եղած է եպիսկոպոս (Պալեան, Ցուցակ, էջ 56-57)։

Ինչպէս կը տեսնուի Վահան երէց Զէյթունցի ամբողջ ընտանիքով և պարագաներով և աշակերտներով Զէյթունը դարձուցած է մեծ դպրոց մը գրչագրական։

Կեսարիա, մանաւորապէս Թոմարզա, որ կարծես թէ իր աշխարհագրական դիրքով կապուած է Զէյթունի, այնքան մօտ էր այս դպրոցին որ կրած է անոր ազդեցութիւնը, և կերպով մը գործակցութիւն մը ստեղծուած է։ Հոն կը տեսնենք Զէյթուն մարզուած դէմքեր, ինչպէս Յովհաննէս եպ. Զէյթունցին և իր որդին Յակոբ վրդ. Զէյթունցին (1588) և Գրիգոր եպ. Ծերունը կամ Պարոնտէրը (1629-1630) որոնք Թոմարզայի եպիսկոպոսական աթոռին վրայ են և իրենց ծննդավայրին աւանդութիւնները կը պահպանեն։

Ճիշդ այդ ժամանակամիջոցին Կեսարիոյ Առաջնորդական աթոռին վրայ էր Գրիգոր վրդ. Կեսարացի, դարձեալ Ղուկաս վրդ. Կեղեցիի դպրոցին աշակերտներէն հասած մեծ ու կորովի եկեղեցականը, որ իր կարգին աշակերտներ կը հասցնէր, որոնցմէ Ազարիա Տարօնեցի կամ Սասունցի «փիլիսոփայ», նոյնպէս Թոմարզայի վանքին մէջ կ'աշխատէր։

ակառակ անոր որ ԺԶ. դարուն վերջերէն սկսեալ Անատոլուն վերիվայր ընող յուզումները, խանգարած են բնականոն ընթացքը Կեսարիոյ մէջ և շուրջը տեսնուած կրթական վերազարթման այս ձեռնարկներուն և յիշատակարանները այնքան սակաւագիւտ՝ որ կարելի չէ վերակազմել ամբողջական պատկերը՝ Կեսարիոյ այդ ժամանակի վանքերու մէջ և անոնցմէ դուրս առանձնական դասաւանդութեամբ մշակուած ուսուցման, սակայն մեզի հասած հատուկտոր տեղեկութիւնները և հազուագիւտ յիշատակարանները, բաւական են ապացուցանելու թէ ԺԷ. դարուն սկիզբը, Կեսարիա կը գտնուէր ուղղակի ազդեցութեան տակ Կիլիկիոյ լեռնաստաններուն մէջ ծաղկող վարդապետարանին և գրչապետ Վահան երէցի գրչութեան դպրոցին։

Հոն կը գտնենք 1608ին Յակոբ Քարտուղար Զէյթունցին (տես էջ 641) որուն յիշատակարանին ընթերցումը որքան որ ալ պատահօրէն Կեսարիա ինկածի մը տպաւորութիւնը կը թողու, սակայն միեւնոյն ատեն կրնայ Գր. վրդ. Կեսարացիի և իրեն ժամանակակից ու գործակից կամ աշակերտ անձերու կողմէ Կեսարիա կոչուած ենթադրուիլ իր արուեստը գործադրելու համար։ Այսպէս մտածել կը մղուինք նկատի ունենալով իր Քարտուղար տիտղոսը, իր ժամանակին ամէնէն համբաւուած «Քաջ Քարտուղարն Զէյթունցի Վահան Երէցն» իրեն

(1) Գաբրիէլի ուսուցիչներն էին Կարապետ եպ., Թորոս քհ., Ղազար եպ. Զէյթունցի և Պաղտասար սարգ. Սեբաստացի ծաղկող և կազմող (Արտաւազդ Արքեպ. Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի, էջ 323)։ Աշակերտած է Զէյթունի վանքին (Նոյն, էջ 340) ինչպէս կը հասկցուի իր 1526ին, 1536ին և 1554ին գրած երեք ձեռագիրներէն (գրուած Զէյթուն, Մարաշ և Երուսաղէմ) (Նոյն, 340. Նաև Տրդատ եպ. Ցուցակ հայ. ձեռագրաց, էջ 67-70)։

(2) Ասոնցմէ անուանով ծանօթ են մեզի Վասիլ եպ. (Ցուց. Հալէպի, էջ 232), Յակոբ Զէյթունցի (Նոյն, 81), Խաչատուր (Նոյն, 226), Յովնան և Յովհաննէս երէցները (Պալեան, Ցուցակ Թուրքիոյ, էջ 56-57)։

ուսուցիչ ունենալը եւ իր ընդօրինակած Շարականին Սսոյ «Խուլ» կոչուած օրինակէն(1) —ընտրելագոյն համարուած—կատարած ըլլալը։ Իր միւս ուսուցիչը՝ այն որ իրեն սորվեցուցած է ոսկեզօծելու արուեստը, էր Մարտիրոս վրդ. Հիզանցի (Արտաւազդ Արքեպ. Ցուցակ Հալէպի, էջ 81), որ հաւանօրէն «ի դրանէ Ս. Յովհաննու Կարապետին» Մշոյ «սպասաւոր Մարտիրոս վարդապետն» է որ 1617ին գրուած եւ դարձեալ Խլկցի «ի լաւ եւ ի ստոյգ յընտիր օրինակէ» ընդօրինակուած Շարակնոցի(2) գրիչը՝ «Կարապետ ... սարկաւագի» (Տաշեան, Մ. Ցուցակ, էջ 800) եւ ըստ Տաշեանի հաւանօրէն 1624ին Կարին գրուած Շարակնոցին գրիչ եւ ծաղկող Գրիգոր Կողոնացիի (Նոյն, էջ 779) ուսուցիչը եղած է(3)։

Ամէն նշաններ կան որ Յակոբ քարտուղար Ջէյթունցի պատրաստուած մէկն էր, մանաւորապէս ժամանակին ամէնէն գլխաւոր գիտութիւնները համարուած երկու արուեստներուն՝ երաժշտականին եւ գրչութեան մէջ, նոյնիսկ Ջէյթունի մէջ, Վահան երէց գրչապետին ձեռքին տակ, եւ յետոյ անցած է Հալէպ ուր 1602ին գրած (Ցուցակ Հալէպի, 81) եւ 1604ին՝ գնած էր Աւետարաններ (Նոյն, 49) եւ ապա անցած՝ Կեսարիա (4) ուր 1608ին գրած էր Շարակնոց մը եւ վերջապէս Երուսաղէմ ուր գնած էր 1630ին Գանձարան մը (Նոյն, էջ 205-6)։

Ան հասուցած էր իբր Քաջ Քարտուղար աշակերտներ եւս (Նոյն, 122) եւ ինչպէս կը տեսնուի միայնակ չէ որ գացած էր Կեսարիա այլ իրեն հետ ունէր իբր ընկեր «զհամշիրակ եւ զհամտէզկեհ գրչութեան զեղբայրն՝ զԱլեքսիանոս դպիրն» (Սիսուան, էջ 186)։

Ասիկա կը հաստատէ թէ Տաւրոսեան լեռներուն կատարները հաստատուած դպրոցին՝ գրչապետին այս երկու աշակերտները, Յակոբ եւ Ալեքսիանոս, երկուքն ալ Ջէյթունցի հայրենակիցներ (համշիրակ) եւ համարուեստ (համտեզկեհ) Տաւրոսէն անդին Կեսարիա գացած էին, շնորհիւ այն կապակցութեան որ Կիլիկիա աշխարհագրապէս ունէր Կեսարիոյ հետ եւ մասնաւորապէս այն պատճառով որ Կեսարիոյ առաջնորդական աթոռին վրայ կը գտնուէր կարող, գործունեայ եւ մաքառող եկեղեցական մը՝ Գրիգոր վարդապետ Կեսարացիի պէս, որ իբր առաջընկաց եւ անդրանիկ աշակերտ Ամիթի դպրոցին մինչեւ վերջը պահած էր իր մտերմութիւնը Կիլիկիոյ մէջ գործող եւ դիրք ստացող Ազարիա Ջուղայեցի, Յովհաննէս Այնթապցի եւ Պետրոս Կարկառեցի կաթողիկոսներուն հետ, որոնց բարեկամը, գործակիցը եւ գաղափարակիցը եղած էր։

Յետոյ ո՞վ կրնայ պնդել թէ Յակոբ Ջէյթունցի քարտուղարէն յետոյ «Քարտուղար Յովհաննէս Երէց», որ 1621ին գրած է Կեսարիոյ մէջ յայսմաւուրք մը, «զցայգ եւ զցորեկ տքնութեամբ եւ բազում աշխատանօք» մինչեւ Երուսաղէմէն, Հալէպէն, Կ. Պոլիսէն եւ Սպահանէն(1) սուղ գիներով թուղթ բերելով մէկ ուրիշ աշակերտը չէր Ջէյթունի դպրոցին։

Ան ինչպէս կ'երեւի՝ Յակոբ Ջէյթունցիի պէս վարպետ մըն է իր արհեստին մէջ որ կը գրէ եւ կը ծաղկէ եւ «հաստահիմն ոսկով եւ լաճվարդով» կը զարդարէ իր ձեռագիրը, գաղափարական մարդու մը տոկունութեամբ եւ ճիգերով(2) զայն գլուխ հանելով «ի հայրապետութեան ... մեծ րաբունապետի Գրիգորին, որ է պայծառ ջահն Հայաստանեայց ազգիս... ի դառն եւ ի նեղ ժամանակի որ հարկապահանջութեամբ ազգս տապալի»։

Յովհաննէս Երէց քարտուղարի Կիլիկեան դպրոցին աշակերտ մը ըլլալը անկասկած պիտի ըլլար մեզի համար եթէ Խլից եւ Խլկցի բառերուն միջեւ կապ մը հաստատել կարելի ըլլար, վասնզի Յովհաննէս քեռորդին էր «Խլից» Տ. Յովասափին։ Սակայն առանց անոնց ալ կրնանք զայն նոյնացնել Վահան երէց գրչապետին «Յովհաննէս Երէց» անուն աշակերտին հետ։

Այսպէս կը տեսնենք թէ Ջէյթունի դպրոցը իր աշակերտները կը ղրկէր մինչեւ Կեսարիա, հոն գործելու համար, եւ հոն արդիւնաւորելու համար Կիլիկիոյ վարդապետարանին գործունէութիւնը՝ իբր կայան ընտրելով Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը, ուր արդարեւ այդ ժամանակամիջոցին կը տեսնենք Ջէյթուն ուսում առած վարդապետներու վարչութեան տակ ուսումնական գործունէութիւն մը՝ ուղղակի Կիլիկեան վարդապետներու շունչով։

Հոն համընթաց ուսումնական շարժման ինչպէս այլուր, կը տեսնենք նաեւ ծաղկումը գրչութեան արուեստին, որ մասը կը կազմէր ժամանակին ուսման։ Հոն Աստուածատուր եպ. Տարօնեցի աշակերտներու շարքը սպառելէ եւ ժամանակ մը՝ հաւանօրէն Անատոլուի վըրդովութիւններուն պատճառով ուսումնական շարժումը դադրելէն յետոյ, հազիւ թէ ճելալիներու շարժումին վերջ տրուած՝ դարձեալ մտաւորական շարժում մը կը տեսնուի, հաւանօրէն Գր. վրդ. Կեսարացիի աշակերտ Սասունցի Ազարիա փիլիսոփայի ջանքերով, հաւաքուած էին հոն հաւանօրէն բազմաթիւ ձեռագիրներ, որոնց մէջ կը գտնէր Մեսրոպ Կաֆայեցի գրեթէ բոլոր հայաբնակ վայրերը շրջելով չգտած ձեռագիրը, 1621ին Ասիկա փաստ մըն էր թէ հոն հաւաքուած էին գրիչներ որոնք ձեռագիրներ կ'ընդօրինակէին։ Արդարեւ հոն կը

---

(1) Այս «Որսայ առաջին վարժապետին եւ անուն Խուլ որջորջելոյ» (Տաշեան, Մ. Ցուցակ, էջ 442) կամ Խլկցի կոչուած (Նոյն, 800) «լաւ», «ընտիր» եւ «ստոյգ» որակուած օրինակէն (Նոյն, 442 եւ 800) 1625ին օգտուած է նաեւ Վահան երէց Ջէյթունցի, իր ծննդավայրին մէջ (Նոյն)։

(1) Ձեռագիրը գրուած է «ի յերկիրն յԱմթայ ի գիւղաքաղաքն յԱկել կոչի»։ «ՅԱկելի տեղը անյայտ է։ Սակայն եկեղեցիին անունն էր Ս. Նշան։ Ձեռագիրը կը յիշատակէ առաջնորդը Բարսեղ վրդ. որ Ամիթի առաջնորդն էր, ուրեմն Ակել անոր ենթակայ էր. կը յիշէ նաեւ «հայրապետն մեր Ղազար եպիսկոպոսին Աստուածածինի»։ Ասիկա ալ մատնանիշ կ'ընէ Ս. Աստուածածնայ վանք մը որուն վանահայր=հայրապետն էր Ղազար եպ.։ Ինծի կը թուի Արղնի պէտք է ըլլայ Ակելն։

(1) Կողոնացի որոշապէս կը յիշէ Մարտիրոսի ծննդավայրը, մինչ Կարապետ Սրկ. միայն Մարտիրոս վրդ. ըսելով կը բաւականանայ։

(2) Բայց ոչ Սեբաստիա ինչպէս կը կարծէ Ալիշան (Սիսուան, 186) որ անշուշտ վրէպով մը 1608ին Կեսարիա գրուած Շարակնոցն ալ —որուն յիշատակարանէն տողեր մէջ կը բերէ — կը կարծէ Սեբաստիա գրուած։

(1) Խօճա Ինճիպակ բերած է թուղթը Սպահանէն, Ջիմաթ անուն կնոջ մը 300 դրամ նպաստով։

(2) Նշանակելի է որ իր Ալթուն աղջիկը օգտակար եղած է իրեն «պէտս կարենաց յնուլով, թէ թուղթս կոկելով եւ թէ զիշերն զճրագս վառելով, մինչ ի լոյս ի դէմս տքնութեամբ կալով եւ զմարմնաւոր կերակրիկս հոգալով»։

հանդիպինք 1629էն 1635 երկու գրիչներու՝ Պարսամի և Պլպուլի, որոնք գործակցաբար և միասին աշխատելով կը գրեն ձեռագիրներ։

Դժբախտաբար իրենց գրած ձեռագիրներուն յիշատակարաններուն ամբողջական պատճէնը չունիմ աչքի առջև, սակայն ինչ որ բռնուած է բաւական յատկանշական է։ Նախ իրենց հաւաքական աշխատութիւնը կ'ենթադրէ դպրոցի մը գոյութիւնը։ Նոյնպէս նկատելի է որ «Պարսամի ուսուցիչն եղած է Գրիգոր անուամբ մի եպիսկոպոս» (Ագաւնունի եպ. Բիւզանդիոն, թ. 351) որ կա՛մ ժամանակակից Կեսարիոյ առաջ. Գր. վրդ. Կեսարացին կա՛մ Թոմարզայի՝ Գրիգոր Ծերուն Պարոնտէր Զէյթունցի եպիսկոպոսն է և կա՛մ գրչապետ Վահան երէց Զէյթունցիի երէց որդին՝ Ուլնիոյ առաջ. Գրիգոր եպ.ը (†1663)։ Ասոնցմէ որո՞ւն ալ աշակերտած ըլլայ Պարսամ, Կիլիկիոյ բարձունքներուն վրայ ծաղկող դպրոցին կապուած է, վասնզի իրենց մշակութեամբ և զարգացմամբ երեք Գրիգոր եպ.ներն ալ անոր հետ առընչութիւն ունին և անոր աշխատաւորներէն կամ քաջալերողներէն են։

Իրենց հետ ժամանակակից է Տ. Աւագ քհ. որ Թոմարզայի մէջ գրած է Աւետարան մը 1630ին, ծերութեան հասակին մէջ։ Դժբախտաբար իր արուեստը ո՞ւր ուսած ըլլալը անծանօթ կը մնայ մեզի, սակայն որոշ է թէ այս քահանան վանքին դպրոցին հետ ոչ մէկ կապ ունի։ Իր որդին՝ Բարսեղ քհ.(1) 1637էն 1657 Կեսարիոյ՝ գաւառին զանազան վայրերը (Կեսարիա, Թոմարզա, Կէրմիր եւայլն) ձեռագիրներ գրած է, բաւական խնամեալ և զարդարուն։ Չէ յիշած իր ուսուցիչները, թէև կրնայ մտածուիլ թէ հօրմէն առաջնորդուած է։ Նկատելի է որ մեծ գովեստներ ունի Յակոբ քհ. Կեսարացիի համար, որուն կրնար աշակերտած ըլլալ։

Բարսեղ քհ., որ հաստատուն բնակավայր մը չէ ունեցած, հասած ըլլալ կը թուի առանձնական ուսուցմամբ։ Ինչպէս կը տեսնուի ինքն ալ իր կարգին ուսուցիչ եղած է այլոց, և հասուցած է աշակերտներ, որոնց մէջ առաջին տեղը պէտք է տրուի անշուշտ իր որդւոյն Միքայէլ քհ.ի որ 1681ին կը մեռնի, երբ արդէն Բարսեղ քհ. մեռած էր։ Իր աշակերտն էր նաև Կիրակոս քհ. (որդի Ղազար քհ.ի) որ 1661ին գրած է Յայսմաւուրք մը։ Իրեն և իր որդւոյն Միքայէլ քհ.ի աշակերտած է Գէորգ քհ. որ 1681ին գրած է Աւետարան մը։ Գէորգ քհ. որ ձեռնադրուած է 1671ին և այրիացած՝ 1676ին, իր ձեռագիրը գրած է Թոմարզա ժամանակին ուսումնավայրին մէջ։

Այս իրարու աշակերտող չորս քահանաներուն չարայարեալ գործունէութեան շրջանին Կեսարիոյ մէջ և շուրջը կը գործեն ուրիշ գրիչներ որոնց վրայ շատ դոյզն ծանօթութիւններ ունինք և չենք գիտեր թէ ո՞ւրկէ կու գան, ի՞նչպէս հասած են և ի՞նչ կապակցութիւններ ունին իրարու հետ։ Այսպէս ձեռագիրներ կը գրեն 1658ին Կեսարիոյ մէջ Թորոս Գրիչ, 1659ին Թալասի մէջ Յովհան քհ., 1662ին Թոմարզայի մէջ Յովակիմ քհ., 1663–1664ին Կեսարիոյ մէջ Մատթէոս Աբեղայ, 1665ին դարձեալ Կեսարիոյ մէջ Պօղոս քհ. Մարզուանցի (2),

(1) 1635ին քահանայ օծուած և 1638ին այրիացած է։

(2) Յակոբ կաթ. Ջուղայեցի կաթողիկոսի իբր համբաւ ընկեր Կեսարիա եկած և հոն աւարտած է։



1670ին Կեսարիոյ մէջ՝ Գրիգոր, և Նիկտէի մէջ՝ Գրիգոր Կողոնեցի (1), 1676ին Կեսարիոյ մէջ Սրապիոն սարկաւագ, 1677ին Կեսարիոյ մէջ Գրիգոր Գրիչ(2), և թերևս ուրիշներ՝ քաղաքին և թեմօրէից մէջ, որոնց գործերը անծանօթ կը մնան, ձեռագիրները կորսուած կամ տպագրութեամբ ծանօթացած չըլլալուն հետեւանօք։

Սակայն ինչ որ մնացած է և ծանօթացած, բաւական է ապացուցանելու համար թէ Կեսարիոյ մէջ, գրչութեան տրուած էր անհրաժեշտ կարեւորութիւնը անսնունդ չձգելու համար միտքերը և ընթերցման նիւթ հայթայթելու համար վանքերու մէջ ծաղկող դպրոցներէն հասած անձերու։

Մասնաւորապէս երբ ԺԷ. դարուն վերջերը՝ Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին մէջ կը ծաղկի դպրոց մը ուղղակի Ամրտոլու վարժարանին ազդեցութեան տակ,—ինչպէս պիտի տեսնուի յետոյ—, հոն կը տեսնուի ծաղկումը նաև գրչութեան արուեստին որ անբաժան մասը համարուած էր ուսման՝ Ամրտոլու դասարանին մէջ։ Այսպէս Յովհաննէս Կոլոտի և Գրիգոր Շիրուանցի Շղթայակիրի «դասատուն»էն՝ այսինքն դպրոցական ընկերներէն էր Սարգիս վրդ. «այր խոհեմ յոյժ եւ քաղցրաբարոյ» որ գեղարուեստի սիրահար մըն էր (Բաբգէն վրդ. Կոլոտ Յովհաննէս, էջ 157)։ Տպագրիչ Մարզուանցի Գրիգոր դպիր կ'ըսէ թէ «եմ ձեռնասուն աշակերտ Տիգրանակերտցի Ռադիկ Երաժիշտ Սարգիս գիտնական վարդապետին որ ի յԱմրտոյ Դասատունն է վարժեալ, հմուտ աստուածային գրոց» և կը յարէ թէ «ես նուաստ աշակերտ գոլով նմին ըստ իմում կարողութեամբս(!) ուսայ ի նմանէ **զընթերցողութիւն եւ զծաղկարարութիւն**»։ Այս տողերը ցոյց կու տան թէ Ամրտոլու մէջ ընթերցողութեան հետ զուգընթաց կը մշակուէր նաև գրչութիւնը կամ նոտարութիւնը։ Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին մէջ ալ նոյնպէս այդ օրերուն (1683–1691) Ներսէս վրդ. նոտարութիւն կը սորվեցնէր Յովսէփ երէցի և Սրապիոն քհ.ի և անոր որդին՝ Պօղոս դպիրի. իսկ վանքէն դուրս, սակայն անոր մօտը՝ Էֆքէրէի մէջ—ինչպէս երբեմն Թոմարզայի վանքին մօտիկը ԺԷ. դարուն Ա. կէսին Աւագ քհ.ի և Բարսեղ քհ.ի ընտանիքին և աշակերտներուն ջանքերով— երեւան կու գար գրիչներու տուն մը։

Այս վանքէն դուրս ծաղկած նոր տան պետն է Յարութիւն քհ. Էֆքէրէցի, որ 1693էն սկսեալ —թերևս աւելի կանուխ ալ — գրչութեան արուեստը մշակած է։ Ան որդին էր Պարսամ քհ.ի և աշակերտը՝ Աստուածատուր քհ.ի, որմէ պէտք է սորված ըլլայ գրչութեան արուեստը Ս. Կարապետէն դուրս։

Այս քահանան, ինչպէս կը տեսնուի իր ըրած ընդօրինակութիւններէն, նպաստած է այն ջանքերուն որոնք կատարած են Ս. Կարապետի հովանիին տակ, Ամրտոլու մէջ մարզուած անձեր։ Այս ներշնչման տակ ան սովորական Աւետարանի, Շարականի, Մաշտոցի, Յայսմաւուրքի նման գործերէ զատ կրօնական դաստիարակութեան յատուկ մեկնաբանական գործերու ընդօրինակութիւնն ալ կը կատարէ։

Ակնարկ մը իր գրած ձեռագիրներու վրայ բաւական պիտի ըլլար

(2) Ասոր ուսուցիչն էր՝ իր հայրը Մարուգէ քհ.։

(3) Ասոր ուսուցիչն էր Մինաս երաժիշտ քհ.։

ցոյց տալու համար ներշնչող ոգին։ Ահա իր գրած ձեռագիրներէն մեզի ծանօթները.

1. Շարական ատենի 1693ին երբ դեռ դպիր է։

2. Մեկնութիւն Սաղմոսաց Ներսէսի Լամբրոնացւոյն, 1695ին երբ նորընծայ քահանայ է։ Գրել տուողն է Ամրտոլու դասատան աշակերտ Յովհաննէս վրդ. Ատանացի։

3. Մեկնութիւն Մատթէի Ներսէս Շնորհալւոյն 1703ին։

4. Սաղմոս 1706ին։

5. Աւետարան, 1711ին Ս. Կարապետի «սպասաւոր Յովհան վրդ.ի միջնորդութեամբ»։

6. Յայսմաւուրք 1718ին որ գրել տուած է Մանտիկոնցի Մահտեսի Պօղոսն և որդեգիրը՝ Մահտեսի Սարգիս Կ. Պոլսոյ Ղալաթիոյ եկեղեցիին համար։

Շատ նշանակելի է որ այս Յարութիւն քհ.ն և Սրապիոն քհ.ն—աշակերտ Ս. Կարապետի մէջ ուսուցիչ Ներսէս վրդ.ի — իրենց կարգին գործակցաբար կը հասցնեն աշակերտներ, որոնց անդրանիկները կը հանդիսանան իրենց զաւակները, Պօղոս և Աստուածատուր դպիրները (1721ի Աւետարան)։ Ասոնցմէ Պօղոսի (որդի Տ. Սրապիոնի), աշակերտներ հասուցած ըլլալը կամ ոչ, փաստերու չգոյութեան պատճառով, չեմ գիտեր։

Իսկ Աստուածատուր դպիր (որդի Տ. Յարութիւնի) արդէն 1728ին ինքն ալ քահանայացած ոչ միայն ձեռագրական ահագին աշխատութիւններ կատարած է(1), այլ պահելով ընտանեկան աւանդութիւնը հասուցած է աշակերտներ որոնց անդրանիկը իր զաւակը Յովհաննէս դպիրն է, որ 1729ին սոսկ իբր Նոտար և քարտուղար՝ առանձին և 1749ին իբր սարկաւագ և 1757ին երէց, իր հօրը Աստուածատուր քհ.ի հետ և 1754ին և 1760ին առանձին կը գրէ ձեռագիրներ։ Ասոնցմէ վերջինին մէջ —ժողովածու մը— կը խնդրէ յիշել նաև «զհոգեւոր եւ զմարմնաւոր ծնողն եմ եւ զվարժապետն եմ Աստուածատուր քահանայն... եւ զմեծ պապքն իմ Տէր Պարսամ քահանայն եւ **Նոտար Յարութիւն գիտնական քահանայն**»:

Այս կերպով Տ. Պարսամէն մինչև Տ. Յովհաննէս զաւկէ զաւակ չորս սերունդ Էֆքէրէի մէջ իրարու կ'ուսուցանեն գրչութիւնը՝ այս քահանաները, որոնք միայն իրենց զաւակները չեն մարզած այլ նաև ուրիշներ։ Այսպէս կը պատահինք 1725էն 1727 յաջորդաբար երեք

(1) Աստուածատուր երէց աշխատանք ունի. բազմաթիւ ձեռագիրներու վրայ որոնք են.

1. Աւետարան 1721ին ընկերակցութեամբ Պօղոս դպիրի գրած է։
2. Ժողովածու քարոզից եւ ճառից 1726. միայն ծաղկած է։
3. Ս. Գիրք(?) 1728. կազմած և նորոգած է։
4. Ճաշոց 1728 կազմած և նորոգած է։
5. Յայսմաւուրք 1739ին գրած։
6. Սաղմոս եւ Տօնացուց 1740ին գրած։
7. Գիրք Դատաստանաց 1740ին(?) գրած։
8. Գանձարան 1742ին գրած է իր հօրը՝ Յար. քհ.ի և որդի՝ Յովհ. քհ.ի հետ։
9. Լուծմունք Մատթէի 1749ին գրած է որդին՝ Յովհ. քհ.ի հետ։
10. Ժամագիրք Ատենի 1754ին » » » » »



տարիներու ընթացքին երեք ձեռագիրներու որոնց գրիչն է Յովհաննէս քհ.ի(1) որդի Էֆքէրէցի Յովակիմ դպիր, որ իմ տեսութեամբս Տ. Պարսամի որդւոց և թոռանց հետ մարզուած գրիչ մըն է ոչ թէ անոր համար որ Էֆքէրէցի է այլ վասնզի Տ. Պարսամի թոռը Աստուածատուր երէց, իր 1726ին գրած՝ Ղազար վրդ. Ջահկեցիի ձեռագիրը կը ծաղկէ։ Այս գործակցութիւնը կ'ենթադրէ դպրոցակցութիւն մը։

Նոյնպէս 1752ին կը տեսնուի գրիչ մը՝ դարձեալ Էֆքէրէցի Յակոբ քհ. որ կը խնդրէ յիշել «զվարժապետն» իւր «Տէր Աստուածատուր շնորհաներկ քահանայն» որ ուրիշ ոչ ոք կրնայ ըլլալ եթէ ոչ Նոտար Յարութիւն գիտնական քհ.ի զաւակը և Յովհ. քհ.ի հայրը՝ նոյնանուն քհ.ն։

Յակոբ քհ. Էֆքէրէցի կը գրէ նաև ուրիշ ձեռագիրներ (1754ին և 1756ին) և կը կազմէ գիրք մը (1769ին)։ Եթէ Յովհաննէս քհ.ով կ'ընդհատուի Տ. Պարսամի սերունդին մէջ զաւկէ զաւակ ուսուցումը, Յակոբ քհ. Էֆքէրէցի կը շարունակէ զայն, վասնզի իր զաւակը Տիրացու Գրիգոր 1767էն մինչև 1783 կը գրէ բազմաթիւ ձեռագիրներ(2)։

Այսպէս Էֆքէրէի մէջ, Ս. Կարապետի հովանիին տակ մենք կը տեսնենք քահանաներու վեց սերունդներ որոնք յորդւոց որդի իրարու ծնող և վարժապետ կը հանդիսանան և գրեթէ գրչութեան դպրոցի մը տեւականութիւնը կ'ապահովեն մօտաւորապէս դար մը։

Գրչութեան այս ոգեւորեալ շարժումը անշուշտ իր զարգացումը կը պարտէր ժամանակին և միջավայրին և նոր գաղափարներու տարածման, որոնք միտքերը կը դարձնէին հետաքրքիր ու ծարաւի։

Մասնաւորապէս ԺԸ. դարուն սկիզբը երբ միտքերու մէջ տեղ կը գտնեն նոր գաղափարներ և Հայ Եկեղեցւոյ պաշտօնեաներէն ոմանք տատանիլ կ'սկսին դաւանաբանական հարցերու մասին, կաթոլիկ և Հայ ըմբռնումներուն միջև, քննադատական ոգին կ'արծարծուի, և հակառակ անոր որ Հայ տպարանները կը գործեն, մեծագոյն ծառայութիւնը մատուցանելով Հայ միտքին, դարձեալ կը շարունակուին ձեռագիրներ գրուիլ, մանաւանդ կեդրոնէ հեռու ինկած վայրերու մէջ՝ ինչպէս էր Կեսարիա՝ ուր Տ. Պարսամի զաւակները և թոռները, իրենց գրիչը կը տրամադրեն այլոց, ընթերցման նիւթ հայթայթելով հետաքրքիր և հարցասէր միտքերու։ Եւ ինչպէս մեքենայի դեր կը կատարեն անոնք, առանց որոշ հայեցողութեան կամ գաղափարականի մը ծառայելով ամէն դպրոցի և գաղափարի։ Այսպէս Աստուածատուր երէց, այս ընտանիքին ամէնէն աշխատաւոր դէմքերէն մին՝ Սարաֆեան Արքեպ.ի հրամանով կը գրէ Ֆրա Պետրոս Դոմինիկեան

(1) Այս Յովհ. քհ.ն պէտք չէ շփոթել Տ. Պարսամի Ղեւտական սերունդին վերջին շառաւիղին հետ, որ տակաւին 1728ին աշխարհական և 1749ին սարկաւագ և 1754ին միայն քահանայ էր և չէր կրնար 1725–1727ին քահանայ յիշուիլ։

(2) Ծանօթ են իր գրածներէն. 1. Սէր Աստուծոյ առ մարդն, 1767ին. 2. Նոյն՝ 1770ին. 3. Քարոզգիրք, 1780ին. 4. Ստեփաննոս Լեհացիի թարգմանած Դիոնեսիոս Արիսպագացին, 1782ին. 5. Նոյնը՝ դարձեալ 1782ին. 6. Նալեանի «Մեկնութիւն եօթն խորհրդոց», 1783ին։

կրօնաւորի «Գիրք Դատաստանաց»ը (1740) (1) որ որոշ է թէ ինչ մտայնութեան պատկանող գործ մըն էր։

Ցիշատակարանին մէջ իր գրած տողերը՝ որոնցմով Սարգիս եպ. Սարաֆեանը կը ներկայացնէ «ջահ անճիջանելի… ընդդէմ հերձուածողաց եւ հերետիկոսաց անսայթաքելի եւ անդրդուելի ի ծոց սուրբ եկեղեցւոյ եւ ի պարծանս Հայաստանեայց…», կը մատնանշէ մտքի երերուն վիճակ մը, արդիւնք անշուշտ ոչ հաստատուն կրթութեան, և կերպով մը անհասկացողութեան։ Այսպէս մտածել պարտաւորուած եմ տեսնելով որ նոյն գրիչը համանման բառեր կը գործածէր տարիներ առաջ (1727) ուրիշ եկեղեցականի մը (Եսայի եպ. Տէրէվանքցի) համար որ գրել տուած է Տաթեւացիի Քարոզգիրքը՝ որ ուղղութեամբ և ոգւով բոլորովին հակառակ գործ մըն էր բաղերայի մը այս հեղինակութեան։

Ուրեմն Տ. Պարսամի ընտանիքը կատարած է մեքենական դեր մը, հարիւր տարի նպաստելով Ս. Կարապետի վանքին մէջ ծաղկող դըպրոցին, զաւկէ զաւակ յաջորդութեամբ մը։

Եւ երբ անիկա կը սայթաքէր իյնալով ձեռքը մոլորեալներու՝ —Հայ եկեղեցւոյ հայեցողութեամբ անշուշտ— ԺԸ. դարուն սկիզբը, երեւան կու գար նոր դպրոց մը (տես վարը) որուն ձգտումը ըլլալ կը թուէր, խաչաձեւել կամ չեզոքացնել այդ վրիպածներուն՝ այսինքն Վրթանէս եպ.ի (1706–1720), Կարապետ եպ.ի (1729–1730) և Սարգիս եպ. Սարաֆեանի (1730–1738) պէս յայտնապէս կաթոլիկ եկեղեցականներու գործունէութիւնը։

Այս դպրոցին վարիչը և ղեկավարը՝ Եսայի եպ. Տէրէվանքցի, գրչագրել տուած է բազմաթիւ ձեռագիրներ որոնց վրայ նետուած ակնարկ մը բաւական է չուտով համոզելու մեզի այս ճշմարտութեան։

Ահա այդ ցուցակը (2).

1. Քարոզգիրք Տաթեւացւոյ (ձմրան հատոր) 1727ին գրուած (Երուսաղէմի մատեն. թ 110)։
2. Քարոզգիրք Տաթեւացւոյ (1729) (Երուսաղէմ, թ. 69)։
3. Մեկնութիւն Սաղմոսաց Վարդանայ (1730) (Երուսաղէմ, թ. 218)։
4. Մեկնութիւն Կաթողիկեայց ի Սարգսէ Շնորհալւոյն (1732) (Երուսաղէմ, թ. 76)։
5. Մեկնութիւն Գործոց Գրիգորի Վկայասէրի (1732) (Երուս. թ. 84)։
6. Ջանազանք (1735) (Երուսաղէմ, թ. 68)։
7. Աւետարան (1739) (Պալեան եպ. Հայ Վանօրայք, էջ 48)։

Ինչպէս կը տեսնուի մեկնողական գրականութեան մեծ սէր ցոյց տրուած է, ինչ որ չատ պատիւ էր նաև Կոլոտի դպրոցին մէջ։ Իսկ խիստ նշանակելի է որ անոնց մէջ անդրանիկ տեղը կը բռնէ մէկ գործը Տաթեւացիի որուն նկատմամբ մեծ հակակրանք ունէին կաթոլիկները։

---

(1) Նոյն՝ 1740 և յաջորդ՝ 1741 տարին Մանճըլըքի մէջ՝ Գրիգոր գրիչ նոյնպէս աքոլասթիկ հետեւեալ գործերը կ'ընդօրինակէ. 1. լատին կրօնաւոր Վօրաժինոյի «Բանք ոսկիականք եւ գեղեցկագոյն»ը թրգ. Ղուկաս վրդ. Խարբերդցիի, և 2. Սէրն Աստուծոյ առ մարդ կամ նորագոյն անստառ եւ Անայոնիա, նոյնպէս թրգ. նոյնէն։

(2) Վստահօրէն կարելի է ըսել թէ ուրիշներ ալ պիտի ըլլան։ Ասոնք Երուսաղէմ տարուած ըլլալով Եսայի եպ.էն փրկուած են։



Այս ձեռագիրներուն իբր գրիչ ծառայած է Ցարութիւն դպիր Ատանացի, որ նախ Ատանայի մէջ մարզուած է, «Մահտեսի Ասլան եւ Տէր Մանուկ» ուսուցիչներէն և յետոյ փոխադրուած է 1729ին Տէրէվանքի Ս. Սարգիս վանքը ուր նոյն տարին գրած է երեք գործեր։ Հոս այլեւս ինքզինքը կը կոչէ աշակերտ «Տեառն Եսայի վարդապետի ճարտասանի» (1730), և կը լծուի Ս. Սարգիս վանքին մէջ ընդօրինակելու իր վարդապետին ընտրութեամբ ձեռագիրներ։ Մասնաւորապէս Սարգիս Շնորհալիի Մեկնութիւն կաթողիկեայց գործը, որ 1743–1744ին Կ. Պոլիս տպուած է Կոլոտի վարժարանին ուսուցիչ Պաղտասար դպիր Կեսարացիի հսկողութեան տակ, նոյնիսկ Մուշի Ս. Կարապետի վանքը գտնուած օրինակը բերելով և բաղդատելով, Եսայի վրդ. Տէրէվանքցի ալ ընդօրինակել տուած է Գրիգորիս վրդ.ի մը Կարնոյ մէջ ձեռք բերած օրինակին վրայէն, որ թերեւս իբր սկզբնագիր ծառայած է նաև 1725ին էֆքէրէի մէջ Ցովակիմ դպիրի ձեռքով կատարուած նոյն գիրքին մէկ ուրիշ ընդօրինակութեանը որ կատարել տուած էր Ս. Կարապետի վանահայր Յակոբ «րաբունապետ» վարդապետը։ Այս գիրքին ընդարձակ յիշատակարանին մէջ Եսայի վրդ. կը պատկերացնէ այն կարեւորութիւնը որ իր ժամանակակիցները կու տային այս Սարգիս գիրքին, որ մեծ յարգ ունէր նաև Կոլոտի դպրոցին մէջ։

Դժբախտաբար Տէրէվանքի մէջ ծաղկող այս գրիչը՝ կարճատև գործունէութենէ մը յետոյ հեռացած է անկէ, և չէ ունեցած իր յաջորդները, հետեւաբար տեւականութիւն չէ ունեցած Տ. Պարսամի ընտանիքին պէս։

Այս երկու իրարու մասամբ գործակից և իրար լրացնող դպրոցներու քով՝ անջատօրէն և բոլորովին անկախ և ինքնաբոյս քանի մը ուրիշ գրիչներու կը պատահինք որոնց վրայ չատ սահմանափակ տեղեկութիւններ ունինք։ Ասոնք են, Տ. Կարապետ քհ.՝ որդի Տ. Մինասի եկեղեցական բայց... Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիներուն հովանիին տակ գրած է 1732ին կանոնագիր մը, Ղազարեքհ.ի որ Կեսարիոյ քաղաքին Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիներուն հովանիին տակ գրած է 1732ին կանոնագիր մը, Ղազար վերաբեղայ Տարսիախցի որ գրած է երկու հաւաքածոներ 1732ին և որուն ջապէս Մասոնցի Տիրացու Գրիգոր որդի տիրացու Պօղոսի, որուն «վարդապետն» էր հանգուցեալ Մարուգէի որդի Տէր Կարապետն, անշուշտ ոչ վերոգրեալ Տ. Մինասի որդին։

ԺԸ. դարու կէսէն յետոյ այլեւս գրչագրութիւնը կը կորսնցնէ իր կարեւորութիւնը և այն կ'ըլլայ մասնաւորներու զբօսանքի առարկան, վասնզի Հայ տպարանները կը հայթայթեն բազմատեսակ գիրքեր ընթերցման համար, և Հայ մտքին առջև կը բանան նոր հորիզոններ։

Գ.

## ՎԱՆՔԵՐՈՒ ԴՊՐՈՑՆԵՐ

ԺԴ. դարէն սկսող ընդհանուր տգիտութեան մէջ, որ համատարած էր, իբր առկայծեալ ճրագ կը պլպլային քանի մը վանքեր, մասնաւորապէս հին Սիւնեաց դպրոցի աւանդութիւններով Տաթեւի վանքը, որ իսկապէս հանդիսացաւ վերջին ամրոցը Հայ եկեղեցիին, և միակ վառարանը, որ ուժասպառ Հայ եկեղեցականութիւնը ոգեւորեց որպէսզի իր ոյժերը հաւաքէ և ասպարէզ գայ մաքառելու հա-

մար այն բուռն յարձակողականին դէմ որ Ունիթոռ, Դոմինիկեան, Ֆրանչիսկեան, Կարմելեան միաբանութեան անդամները, իբր Հռոմի գործակալները կը գործադրէին Հայ եկեղեցւոյն դէմ։

Գրիգոր Տաթեւացի (1340-1411) առաջինը կ'ըլլայ պայքարի դրօշը բարձրացնողներուն, ընդարձակ վարժարան մը բանալով այդ վանքին մէջ, ուր բազմաթիւ աշակերտներ ժողված՝ կը դաստիարակէր զանոնք Հայ եկեղեցւոյ ոգւով, և կը զինէր՝ ընդդէմ օտարոտի ձգտումներու։ Իր հաստատած դպրոցը՝ յաջորդ ԺԵ. դարուն կը պահէր դեռ իր գերակշիռ դերը իբր «մայրն իմաստութեան» և կը հասցնէր բազմաթիւ վարդապետներ, որոնք կը տարածուէին երկրին ամէն կողմերը և կը մաքառէին մէկ կողմէն Ունիթոռներու ազդեցութեան դէմ և միւս կողմէն զանազան վանքեր կը վերածէին ուսումնական հաստատութիւններու և ռահվիրան կը դառնային վերանորոգութեան շարժման մը որուն շատ համառօտ ուրուագիծը արդէն տուի (տես վերը, էջ 1065-7)։

Կատարեալ անչքացումէ մը յետոյ ԺԴ.-ԺԵ. դարերէն սկսեալ սակաւաթիւ վանքերու մէջ պլպլացող և անշէջ պահուած հայացի ուսումը աւելի զարկ ու բարգաւաճում ստացաւ և ԺԷ. դարուն սկիզբը՝ ոգեւորութիւն, երբ կաթոլիկ բրոբականտայի նոր կազմակերպութիւնը պարտաւորեց Հայ կղերը բնազդաբար ինքնապաշտպանութեան դիմելու։

Կապադովկիոյ Հայերը որոնք այնքան բազմաթիւ վանքեր ունեցած էին իրենք ալ իրենց վանքերուն մէջ կրթական վառարաններ ստեղծելու աշխատած են գոնէ համեստ սահմանի մէջ, և մաքառած՝ օտարոտի այն քարոզութեանց դէմ, որոնք իսկական խթանը եղած էին վերանորոգման շարժման։

Կեսարիա, այսպէս մասնակցած է ընդհանուր շարժումին, մանաւանդ ԺԵ. դարէն յետոյ, երբ արիւնահեղութեանց և յաջորդական պատերազմներու երկարատեւ շրջանի մը բոլոր դառնութիւնները կրելէ յետոյ, հաստատուն տիրապետութեան մը ենթարկուած է։ Արդարև հոն իբր կրթական ու ուսումնական կեդրոն փայլած են, որչափ կարելի է հետեւցնել վաւերագիրներէ հետեւեալ վանքերը յաջորդաբար։

1. Ս. ԳՐԻԳՈՐ ՆԻՒՍԱՑԻՈՑ ՎԱՆՔԻ ԴՊՐՈՑ (1478-1535).— Այս վանքին մէջ դասարան կամ լսարան մը հաստատուած ըլլալուն մասին որոշ ապացոյց մը չկայ, սակայն հոն մտաւորական շարժման մը նշանները կը տեսնուին ԺԵ. դարուն վերջին քառորդէն սկսեալ։

Հոն, ինչպէս բացատրուեցաւ (տես վերը, էջ 1065) գործած են Սամուէլ և Պետրոս վրդ.ները, Երզնկացի Նաղաշ Յովհաննէս (1478-1481) և իր աշակերտները Ստեփանոս (1481), Աստուածատուր և Թորոս սարկաւագները և Ներսէս քհ. (1535)։

Ասոնք ցոյց կու տան թէ հոն կար դպրոց մը և գրիչներ որոնք իրարու կը սորվեցնէին արուեստը, ոչ միայն գրչութեան այլ նաև ծաղկանկարչութեան, և ոսկեզօծման։

Իսկ բոլորովին հետաքրքրական է որ այս շարժման կը խառնուէին իգական սեռէ ալ անձեր։ Նաղաշ Յովհաննէս կը յանձնարարէ յիշել «զեղբայր դուստրն իմ զԳոհարն որ ի մագաղաթն ճնելն, բաց աշխատեցաւ» (1478) և «զդուստրն իւր զՄալխաթունն որ բազում աշխատութեամբ սպասաւորեցին մեզ եւ աւգնական եղեն ի խազել թղթիս եւ այլ ամենայն սպասաւորութիւնն» (1484)։ Ուրեմն կիներ վանքին մտաւորական շարժման կը բերէին իրենց նպաստը։



Հոն եռուզեռ մը կար ուրեմն որ բոլորովին աննպատակ և առանց ընտրողութեան ալ չէր գործեր, այլ ընդհակառակը հետամուտ էր ընտրութիւն ընելու և ընտիր ձեռագիրներ միայն բազմագրելու, իրողութիւն որ կը հաստատէ նոյնիսկ հաւանօրէն վերոյիշեալ Յովհաննէս քհ. Նաղաշի ձեռքով կատարուած ձեռագիրի մը ընդօրինակութիւնը որ այսօր կը պահուի Լոնտոնի Բրիտանական թանգարանին մէջ (թ. 2615)։

Այս գիրքին մէջ գրիչ մը կ'ըսէ. «... գրեցաւ ձեռնադրութեան գիրքս ձեռամբ Յովանիսի յանցաւորի ի գաւառս Կեսարիոյ, **ի հռչակաւոր անապատս սրբոյն Գրիգորի Նիւսացոյն**: Զի է լաւ եւ ընտիր աւրինակ ընտեալ եւ յաւրինեալ ի տր. Առաքելէ Սիւնեաց եպս.է. Եւ մեք վասն առաւել գեղեցկութեան գրեցաք սա իթվ. Ջխ. (= 1491) ի խնդրոց սրբասնե ...» (դժբախտաբար ընդհատուած)։

Ինչպէս կը տեսնուի գրիչը հետամուտ եղած է լաւ և ընտիր օրինակին և ծանօթ հեղինակի մը գործին որ առաւել գեղեցկութիւն ունէր։

Դժբախտաբար այս խոստմնալից շարժումը որ աննախընթաց է և առաջին անգամ Կեսարիոյ շրջանակին այդ վանքին մէջ կը ծաղկի, հազիւ յիսնամեակ մը կը տեւէ ԺԵ. դարուն կէսէն մինչև ԺԶ.ի սկիզբը և ապա չենք գիտեր ինչո՞ւ կը կասի և հոն կը դադրին այլեւս գրիչներ ընդօրինակելէ, ուսուցանողը և ուսանողը կը պակսի և շարժումը որուն կիներ ալ երբեմն բերած էին իրենց նպաստը այլեւս չի տեսնուիր, այլ կը տեղափոխուի երկճիւղեալ Թոմարզայի Ս. Աստուածածին և Էֆքերէյի Ս. Կարապետ վանքերը։

2. ԹՈՄԱՐԶԱՅԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔԻ ԴՊՐՈՑ. (ԺԶ. դարուն կէսէն — ԺԷ. դարու կէս).— ԺԶ. դարուն երկրորդ կէսին ուրիշ դպրոցի մը գոյութիւնը կը տեսնենք իբր գլխաւոր դէմք ունենալով Աստուածատուր եպ. Տարոնեցին կամ Մշեցին (տես էջ 967-8 և էջ 1067) որուն ուսուցիչներուն անունները ծանօթ են, սակայն իր ուսման վայրը յայտնի չէ։

Այս եկեղեցականը հաւանօրէն Ամիթ դաստիարակուած Յովհաննէս եպ. Հզնեցիի (տես էջ 964) հետ, Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին մէջ կը ծաղկեցնէ մտաւորական շարժում մը։ Ձեռագիրի մը մէջ 1574ին գրիչ մը կը յիշատակէ իբր առաջնորդ «բանիբուն եւ տիեզերալուր քաջ եւ արի Յովհաննէս վարդապետ» մը «որ նա միայն էր մնացել լուսատու Հայոց ազգիս» (տես Տրդ. Վրդ. Պալեան, Ցուցակ Հայ Ձեռագրաց 'ի Թուրքիա, էջ 59)։ Թէև գրչութեան վայրը անծանօթ սակայն ձեռագիրը Կեսարիա պահուած ըլլալէն կարելի է հետեւցնել թէ խօսքը այս Յովհաննէս եպ. Հզնեցիի վրայ էր որ այդ միջոցին Թոմարզայի Առաջնորդն էր և արդարև հոն հիմը կը դնէր մտաւորական շարժման։

Իրմէ գրուած աշխատանք մը, գրչութիւն մը և աշակերտ մը ծանօթ չէ, սակայն իր օրով վանքին մէջ է Աստուածատուր եպ. Մշեցի, որ ոչ միայն ընդօրինակած է բազմաթիւ ձեռագիրներ—կարեւոր թիւ մը ծանօթ— այլ նաև հասուցած է բազմաթիւ աշակերտներ, որոնք իրմէ սորված են գրչութիւնը և իրենց կարգին գրած են բազմաթիւ

ձեռագիրներ(1), մօտաւորապէս հարիւր տարուան ժամանակի մը մէջ, երբ այս վանքին գլուխը կը գտնուէին ընդհանրապէս Կիլիկեան վարդապետարանին և Զէյթունի դպրոցին մէջ պատրաստուած եկեղեցականներ (տես էջ 966 և այլ)։

Թէև հոն չի յիշուիր «դասատուն» մը կամ «դպրոց» մը, սակայն տրուած ըլլալով որ նօտարութիւնը կամ գրչութիւնը մասը կը կազմէր վանքերու մէջ տրուած եկեղեցական ուսման, ինչպէս ուրիշ վանքերու մէջ, հոս ալ քանի որ նօտարութիւն կամ գրչութիւն կ'ուսուցուէր, ատիկա նշան մըն էր որ հոն կ'աւանդուէր նաև այն բոլոր ուսումները՝ որոնք կը դասախօսուէին գրչութեան հետ ուրիշ վանքերու մէջ, մասնաւորապէս ժամանակակից Ամրտօլու դասատան և Կիլիկիոյ վարդապետարանին մէջ, որուն աշակերտները՝ անշուշտ իրենց մայր-դպրոցին նմոյշին վրայ կազմակերպած էին Թոմարզայի վանքին ուսումնարանը։ ԺԷ. դարուն երկրորդ կիսուն դժբախտաբար կ'անշքանայ Թոմարզայի վանքը, ոգեւորեալ գործունէութենէ մը յետոյ։ Այս թուականէն յետոյ Կեսարիոյ մտաւորական կեանքը կը տեղափոխուի Էֆքերէ, Ս. Կարապետի վանքը։

3. Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՄԱՅՐԱՎԱՆՔԻ ԴՊՐՈՑ.— Երբ Թոմարզայի վանքը իբր մտաւորական կեդրոն իր նշանակութիւնը կը կորսնցնէր հայացի մտաւորական շարժումը ստացած էր նոր ուղղութիւն մը։

ԺԷ. դարուն՝ իբր անբարի ժամանակամիջոց մը, անշքացած էին Սիւնեաց դպրոցէն ճիւղաւորուած վանքերու մեծագոյն մասը, ինչպէս նաև Կիլիկեան լեռնային կատարներու մէջ ապաստանած մտաւորական հուսկ յետին օճախները, մինչ Հռոմի աթոռը Արեւելք կը ղրկէր ծանօթութիւններով և գիտութիւններով զինուած և տպագրութեան պէս գերազանց գործի մըն ալ իր տրամադրութեան տակ ունեցող քարոզիչներու խումբ մը։ Ասոնց դէմ միայն ուսումով և գիտութեամբ կարելի էր մաքառիլ և գրեթէ ատիկա ջամբող միակ վանքը՝ Ամրտօլն էր որ ԺԷ. դարուն վերջին կէսին, շնորհիւ Վարդան վրդ. Բաղիշեցիի կը փայլէր։ Այս վարդապետը 1697ին այս «վանքս մեծանուն, ի հիմանէ նորակերտեալ կրկին՝ սրբատաշ, կռամած, խաչկառ կաթողիկէիւ եւ րախատես բնակարանիւք, աշակերտական զրովք եւ ճոխ զարմանալի վարդապետական պէսպէս մատենիւք, եկեղեցական զգեստիւք, եւ բնաւին անթերի իրօք եւ պիտոյիւք զարդարեալ պսակեաց...» (Բաբգէն վրդ. Կոլոտ, 144)։

Յովհաննէս Կոլոտ և Գր. Շղթայակիր, իր երկու գլխաւոր աշակերտները, զայն կը կոչեն «տէր» և «ուսուցիչ» և «քաղցրաքարոզ եւ համեղաբան» վարդապետ, ինչպէս նաև «երջանկազարդ», «ճգնազգեաց». «առաքինասէր», «առաքելաշաւիղ», «աստուածաբանութեան րաբունապետ» և

(1) Ինծի ծանօթ են 1570–1687 մօտաւորապէս հարիւրամեայ շրջանէն 21 հատ ձեռագիրներ, գրուած Թոմարզայի մէջ։ Ասոնցմէ 7ը գրըւած են 1570–1588ին, Աստուածատուր եպ.ի աշակերտ Գրիգոր քհ.է, և 14 հատը՝ 1629էն 1681, զանազան գրիչներէ (2ը Պարսամ և Պլպուլէ, 1ը՝ Աւագ քհ.է, 3ը՝ Աւագ քհ.ի որդի Բարսեղ քհ.է, 1ը՝ Բարսեղ քհ.ի աշակերտ Կիրակոս քհ.է, 1ը՝ Յովակիմ քհ.է, 1ը՝ դարձեալ Բարսեղ քհ.ի աշակերտ Գէորգէ։ Մնացեալներուն գրիչները անյայտ են։



«տիեզերալոյս վարդապետ»։ Իր ջանքովը՝ իրապէս «համալսարան» մը կը դառնայ Ամրտօլը որ իր անունով «Վարդանայ դիտապետի յարկ» ալ կը կոչուի (Տաշեան, Մայր Ցուցակ, 249) գրեթէ 60 տարի (1642–1705), այս մեծ վարդապետին վանահայրութեան շրջանին, մտաւորական նշանաւոր կեդրոն մը դառնալով։

Իր մահէն (1705 Մարտ 24) յետոյ կ'անշքանայ իր դպրոցը՝ երբ ուսման կարեւորութիւնը բաւական ըմբռնուած էր և մասնաւորապէս Թուրքիոյ մայրաքաղաքին մէջ այս ուղղութեամբ ձեռնարկներ կը կատարուէին, առաւել կամ նուազ յաջողութեամբ։ 1701ին 10 չափահաս աշակերտներով Մխիթար Սեբաստացիի կատարած փորձէն յետոյ, 1707ին Աստուածատուր Աղանի Ջուղայեցի վրդ.ին քերականութեան և տրամաբանութեան դասախօսութիւնները, անոնց անդրանիկ նմոյշներն էին։ Ուրիշ վարդապետներ, մեծ մասամբ՝ Ամրտօլու աշակերտ, ինչ որ հոն ստացեր էին իբր գիտութիւն և իբր ուսում կամ արուեստ, կեանքի մէջ կիրարկել կը փորձէին, տարածուելով աստ անդ զանազան վանքեր, որոնց շարքին նաև Կեսարիոյ Ս. Կարապետի վանքը՝ ուր կը գտնենք հաւանօրէն Ամրտօլու վանքը ուսում առած վարդապետներ, որոնք հոն կրթական շարժում մը ստեղծել կը փորձէին, հարիւրամեայ մոռացութեան շրջանէ մը յետոյ — ուր երբեք չի յիշուիր այս վանքը— հոն գտնելով ուսուցիչ Ներսէս վրդ. մը որուն ո՞ւրկէ գալը, ի՞նչ աշակերտութենէ հասած ըլլալը չէ յիշուած, վասնզի իրմէ ոչինչ հասած է մեզի, և իր աշակերտներով է որ կը ծանօթանանք իրեն։ Ասոնցմէ մին՝ Յովսէփ երէց 1683ին կը յայտնէ թէ այդ վարդապետն «բազում աշխատութեամբ» ուսուցած է «արուեստս նոտարութեան» իրեն, և մէկ ուրիշը՝ Սրապիոն քհ. 1691ին զայն կը յիշէ իբր իր ուսուցիչը։

Նկատի առնելով որ երկու գրիչներն ալ Ներսէս վրդ.ը ի կեանս ցոյց կու տան և նոյն վայրը՝ 1676ին գրուած է Սրապիոն Սարկաւագի (որ յետոյ պէտք եղած ըլլայ նոյնանուն քահանան) ձեռամբ Ճաշոց մը, հարկ կ'ըլլայ Ներսէս վրդ.ի ուսուցչական գործունէութեան սկիզբը տանիլ առնուազն 1675 թուական և հետեւցնել թէ Ներսէս վրդ. Ս. Կարապետի մէջ ուսուցած է 1675էն 1691 և թերեւս աւելի ուշ ժամանակներ և հասուցած է թերեւս ուրիշ աշակերտներ։ Ներսէս վրդ. ուրեմն բեղմնաւոր գործունէութիւն ունեցած է Ս. Կարապետի վանքին մէջ, որ կապակցութիւն մը ունի կարծես Ամրտօլու համանուն վանքին դասարանին հետ, վասնզի այդ օրերուն Ս. Կարապետ կը հասնի Վարդան վրդ. Բաղիշեցիի աշակերտներէն Աստանացի Յովհաննէս վրդ. որ ինքն իսկ կը յայտնէ թէ է «աշակերտ Բաղիշեցի Վարդանայ մեծի վարդապետի» և «առ ոտս նորա կացեալ Ժ. ամ եւ առեալ իշխանութիւն զաւազանի ի Բաղիշեցի Վարդանայ վարդապետէն», 1695 Մարտ 10ին կու գայ Կեսարիա Էֆքերէ գիւղը Մեծ-պահոց մէջ և գրել կու տայ Լամբրոնացիին «Մեկնութիւն Սաղմոսաց» գործը «նորընծայ Յարութիւն գծողի»:

Յարութիւն դպիր արդէն 1693ին ուրիշ ձեռագիր մը (Շարական Ասենի) գրած ըլլալով նորընծայ բառը հոս իր արուեստին համար անյարմար կը թուի, հետեւաբար կրնանք վստահօրէն ըսել թէ կրօնաւորական աստիճանի նորընծայութիւնն է և հաւանօրէն Յարութիւն դպիր 1695ին պէտք է քահանայ ձեռնադրուած ըլլայ, ինչպէս կը

տեսնուի ալ արդէն 1706ին, 1710ին և 1711ին գրուած ձեռագիրներու մէջ։ Ներսէս վրդ. —ուսուցիչը՝ Յովսէփ և Սրապիոն քհ.ներուն—եթէ Ամրտոլու վանքին աշակերտներէն չէր, անտարակուսելի էր Յովհաննէս վրդ. Ատանացիի անկէ հասած, գոնէ ժամանակ մը Ս. Կարապետ հաստատուած և հոն դեր մը կատարած ըլլալը։ Իր գրչագրել տուած գործն իսկ ցոյց կու տայ թէ իր դպրոցին ոգին, որ իրմով կը թափանցէր նաև Կեսարիա, ուր զինքն կանխած էր Ներսէս վրդ. որ յայտնի է թէ ժամանակին ըմբռնումով զարգացած եկեղեցական մըն էր, քանի որ ծանօթ էր նոտարութեան, որ ուսման մաս կը կազմէր այն ատեն ինչպէս տեսանք։

Այս երկու վարդապետները՝ Ներսէս (1675) և Յովհաննէս վրդ. Ատանացի (1695) որոնք Ս. Կարապետի մէջ գործակցեցան, և հասուցին աշակերտներ,— որոնցմէ միայն մեզի ծանօթ են գրիչները շնորհիւ յիշատակարաններու— շատ հաւանական է որ փորձած ըլլան նաև Ս. Կարապետի մէջ հիմնելու դասատուն մը, մանաւորապէս իրենց գրչագրել տուած մեկնաբանական գործերէ դատելով։ Սակայն այս ենթադրութիւնը հաստատող անժխտելի փաստ չկայ դժբախտաբար որքան որ ալ բոլոր երեւոյթները նպաստաւոր ըլլան։

Կարելի է ենթադրել թէ ինչպէս Կ. Պոլսոյ մէջ Մխիթար Սեբաստացի և Աստուածատուր Աղաւնի Ջուղայեցի, և ուրիշ շատ մը վարդապետներ՝ թէև ոչ տեւական սակայն վերջապէս կրթական հաստատութիւններ ստեղծել աշխատած են, նոյնպէս նաև Ներսէս և Յովհաննէս Ատանացի վրդ.ները փորձած են նոյնը։

Ամէն պարագայի մէջ եթէ ԺԷ. դարուն վերջերը և ԺԸ. դարուն սկիզբները Ս. Կարապետի մէջ «դասատուն» մը չէր հաստատուած, 20–30 տարի յետոյ վստահօրէն գիտենք թէ հոն կար եկեղեցականներու պատրաստութեան համար հաստատուած դպրոց մը, նշան ժամանակի։

Արեւմտահայութեան կեդրոնին մէջ կանոնաւոր և հաստատուն դպրոցի մը հիմնարկութեան պատիւը կը պատկանի Ամրտոլու «Համալսարան»ին աշակերտներէն Յովհաննէս Կոլոտի, որ երբ Կ. Պոլսոյ Պատրիարք ընտրուեցաւ (1715), առաջին անգամ ազգային քայքայեալ վիճակին միակ դարմանը ուսեալ եկեղեցականներ ունենալը՝ շուտով զգալով, հիմնեց իր պատասխանատուութեան տակ և լատինագէտ Ղուկաս Խարբերդցի վարդապետին օժանդակութեամբ դպրոց մը, ուրկէ գործօն կեանքի կոչուեցան հետզհետէ միեւնոյն ոգւով և դաստիարակութեամբ եկեղեցականներ։

Իրենց համոզումները անոնք կը պարտէին իրենց դաստիարակութեան որ հաստատուն ձև մը ունէր և որոշ ուղղութիւն, մինչ անկէ առաջ Կ. Պոլսոյ մէջ հազուագիւտ կերպով քիչ մը հմտութիւն ձեռք բերող անհատները, պատահական կերպով աստ անդ դաստիարակուած անձեր էին։

Հակառակ անոր որ իր աշակերտներէն ոմանք կաթոլիկական ոգւով գրուածներու ընթերցման ազդեցութեամբ յարեցան կաթոլիկութեան սակայն անուրանալի է որ Կոլոտի դպրոցը՝ իբր շարունակութիւնը Ամրտոլու վանքին, ուսեալ կղերականներ հասցնելով կատարեց նշանաւոր դեր մը։

Այս դպրոցի աշակերտներէն Սարգիս եպ. Սարաֆեան իբր առաջ-



նորդ և Յակոբ եպ. Նալեան իբր այցելու թէև Կեսարիա գտնուեցան (էջ 922-3) սակայն չեմ կարծեր որ կրցած ըլլան ուսումնական կեանք ստեղծել, այլ միայն վանքին պարտքը տուին։ Հոն ուսումնական կեանքի մը առաջին ռահվիրան եղաւ, Կոլոտի վարժարանին մէկ ուրիշ աշակերտը՝ Աւետիք եպ. Եւդոկիացի (1738-1744), որ երբ Կեսարիոյ Առաջնորդ եղաւ, իր հոգեւոր հօրը օրինակով, զարկ տուաւ կրթական գործին, պաշտպանելու համար Ազգային Եկեղեցին, որուն հարուածներ կու տային կաթոլիկութեան մէտ եկեղեցականներ։

Ասոր համար ժամանակը նպաստաւոր էր, վասնզի Կ. Պոլսոյ շարժումը իր արձագանգը կը գտնէր գաւառներու մէջ և անշուշտ նաև Կեսարիա, որ ամուլ գետին մը չէր, քանի որ Կեսարացիք իբր արթուն և ուշիմ անձեր, չէին կրնար ուսման և կրթութեան առաւելութիւնները չզգալ և անկէ օգտուիլ չուզել։

Աւետիք եպ. Թօգատցի հետեւաբար կը հաւաքէ իր շուրջը բազմաթիւ աշակերտութիւն մը (տես էջ 924), որոնց անշուշտ կը դասախօսէր ինք՝ վասնզի 1474–1745 թուականներուն ընդօրինակուած խորհրդատետրի մը յիշատակարանին գրիչը՝ տաղաչափ «Սարգիս Ցուաս բանասէր», խօսելով Աւետիք եպ. Եւդոկիացիի շինարար և բարեկարգիչ գործունէութեան վրայ «յիշեցէք զինքն, զբազմահոյլ աշակերտօքն հանգուցելոյն» կ՚ըսէ և կը յիշէ մի առ մի անուններով 17 վարդապետներ, միայն ողջերը յիշելու պայմանով։

Աւետիք եպ.ի յաջորդին՝ Դաւիթ եպ. Երեւանցիի (1746–1776) ատեն, երբ կաթոլիկութեան վէճերը կը վերարծարծուին, չենք գիտեր թէ շարունակա՞ծ է այս վարժարանը, սակայն որոշ է թէ Ս. Կարապետի վանքին մէջ կ՚ապրէին վարդապետներ, որոնք իր աշակերտներն էին, ինչպէս ինքն ալ աշակերտն էր իր նախորդին, որուն հիմնարկած հաստատութիւնը հաւանօրէն պահած էր։

Իր յաջորդը Մատթէոս եպ. Գարամանեան (1776–1798) ինչպէս յիշեցի արդէն (էջ 930) աւելի կարգաւորեալ վարժարանի մը հիմը կը դնէ վանքին մէջ, սակայն տարբեր ոգւով և ձգտումներով, «դպրաց և ժառանգաւորաց» յատուկ։

Այս հաստատութիւնը բաւական փայլ ստանալէ յետոյ՝ իր յաջորդին Ստեփան եպ. Օֆլազանի (1798–1824) ատեն փակուած է, անշուշտ իբր հետեւանք խռովութիւններու, որոնք յուզեցին ամբողջ վիճակը։

1820ին այդ վարժարանը բոլորովին փակուած էր, ինչպէս կը հասկցուի վանքին գրագիր Պետրոս վրդ. (յետոյ եպիսկոպոս) Կիւլպէնկեանի մէկ գրութենէն (Տրդատ եպ. Պալեան, Հայ Վանօրայք, 1914, էջ 58) ուղղուած առ Տիւզեան եղբայրները։

Այս գրութեան մէջ կը հասկցուի թէ այդ երեք անձերը որոնք իբր աքսորական մնացած են Ս. Կարապետի վանքը, բնակած են այն յարկին տակ որ իբր դպրոց ծառայած էր երբեմն, վասնզի Պետրոս վրդ. սենեակին բերնէն կ՚ըսէ «զի կանխագոյն ես վարժարան էի կարգեալ» և շատ նշանակելի է որ կը յարէ թէ «բայց մախանօք չարին յորմէ էի զրկեալ»:

Տարիներու անշարժութենէն և հոն վարժարան հիմնելու համար երկար ու անօգուտ ճիգերէ յետոյ, Տրդատ եպ. Պալեանի նախաձեռնութեամբ 1888ին հոն բացուեցաւ վարժարան մը որ շատ կարեւոր դեր մը կատարեց գաւառի հայութեան համար մինչև 1914,

պատերազմի տարին, սակայն անիկա կրօնական հաստատութիւն մը ՀԸԼԼալով՝ այլ աշխարհիկ, չէ կարելի զայն համարել վանական հաստատութիւն մը։

4. Ս. ՍԱՐԳԻՍԻ ՎԱՆՔԻ ՎԱՐԺԱՐԱՆ. — Կեսարիոյ Հայ վանքերու շարքի նաև Տէրէվանքի Ս. Սարգիս վանքին մէջ կրթական վառարան մը կազմակերպուած է ԺԸ. դարուն սկիզբը, Յովհաննէս վրդ. Թալասցիի վանահայրութեան շրջանին, հաւանօրէն երբ ան 1698ին Երուսաղէմէն գալով բարերարի մը օժանդակութեամբ կը յաջողէր Ս. Սարգիս եկեղեցին շինել (1701) և հոն ուսումնական հաստատութիւն մը ստեղծել։

Հոն Թոմարզացի գրիչ Ղազար քհ. մը, թերևս վերջին ծաղիկը տեղւոյն Ս. Աստուածածին վանքին մէջ զարգացող դպրոցին, 1705ին կը գրէ Աւետարան մը։ Անիկա կը յիշատակէ նաև իր աշակերտը Ղազար դպիրը, առանց յիշելու իր ուսուցիչը, այնպէս որ ճշդել կարելի չէ թէ ո՞ւր և ո՞րմէ ուսած էր իր արուեստը, որ մշակել կը սկսի Տէրէվանքի Ս. Սարգիս վանքին մէջ, քաջալերութեամբ վանահօր՝ Յովհաննէս վրդ.ի և տնտեսին։

Այս ձեռագիրը սակայն այնքան զօրաւոր փաստ մը չ՚ընծայեր Ս. Սարգիս վանքին մէջ դպրոցի մը գոյութեան, քանի որ եկեղեցւոյ պաշտամանց յատկացեալ գիրքեր ամէնտեղ կրնային ընդօրինակուիլ։

Ընդհակառակը նորութիւն մըն է՝ ընդօրինակութիւնը արաբերէն աստեղաբաշխական գրութեան մը՝ Ռէմգիրքի թարգմանութեան որ կատարուած է «ձեռամբ անարհեստ Սարգիս գրչի» 1722ին «ի վայելումն Տ. Յովհաննէս վարդապետի» Տէրէվանքի վանահօր, որուն արտաքին ուսմանց ալ փափաք և հետաքրքրութիւն ունենալը այս գործը բացորոշ ցոյց կու տայ։ Այս Յովհաննէս վրդ. Թալասցիի (†1722) անմիջապէս կը յաջորդէ հաւանօրէն Եսայի վրդ. Տէրէվանքցի, որ կ՚ենթադրենք իր նախորդին աշակերտութենէն հասած։

Ինչպէս Տէրէվանքի Ս. Սարգիսին վրայ խօսած ատեն ըսած եմ, այս եպիսկոպոսը իր նախորդին օրով սկսած մտաւորական շարժման և գրչագրական աշխատութեանց մեծ զարկ տուած է (տես էջ 1003)։

Եսայի եպ. Տէրէվանքցիի ուսումնական և կրթական գործունէութիւնը այս վանքին մէջ չափազանց բացորոշ է։

Իր աշակերտներէն ծանօթ են Սարգիս եպ. Տ. Կիրակոս, Տ. Մարկոս և Տ. Գրիգոր աբ.ները և վերջապէս Ատանացի դպիր Յարութիւն։

Ասոնցմէ առաջին չորսէն մեզի չէ հասած ոեւէ գործ, սակայն որոշ է թէ անոնք անշուշտ դեր մը կատարած են Տ. Եսայի եպ.ի ձեռքին տակ։ Եսայի վրդ. Տէրէվանքցիի դպրոցը չափազանց նման ձգտումներ ունէր Կոլոտի դպրոցին, որմէ կը ներշնչուի կարծես, Կեսարիոյ մէջ կրօնական բարձրագոյն ուսմանց ռահվիրան հանդիսանալով, դժբախտաբար շատ կարճ ժամանակ մը, վասնզի իր դպրոցը կը քայքայուի շուտով։ Իր դպրոցին վրայ մեր տեղեկութիւնները գրեթէ ոչինչ են, սակայն որոշ է թէ համեստ միջոցներով, սահմանափակ շրջանակի մը մէջ կը կատարէ Յովհաննէս Կոլոտի դերը, մէկ կողմէ ուսում և միւս կողմէ մտաւորական պաշար հայթայթելով՝ գրել տալով իբր ընթերցանութեան նիւթ ձեռագիրներ։ Յիշատակարան մը (1735) զինքը կը կոչէ «Քաջ հռետոր... լցեալ աստուածային գիտեաւն եւ զրասէր որ հին եւ նոր մեկնութիւնսն հաստատեալ ունի յինքն...»: 1739ին Եսայի վրդ.



Տէրէվանքցի վանքը լքելով Երուսաղէմ գնաց և իր ձեռագիրները
Ս. Յակոբեանց վանքին նուիրեց, իսկ իր աշակերտը և դպրոցին ամե-
նէն գործունեայ դէմքը՝ Յարութիւն դպիր Ատանացի հեռացաւ(1) և
Ս. Սարգիսի մէջ դադրեցաւ գաղափարական գործունէութիւնը որ
գրեթէ Եսայի եպ.ով սկսած էր և իրմով վերջացած։

## Դ.

## ԱՌԱՆՁՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄ

Հայ մտաւորական կեանքը իր տեւականութիւնը, աւելի կամ
նուազ փայլով, պահած է ամէնէն դժնդակ համարուած ժամանակա-
միջոցներու մէջ իսկ, վասնզի միշտ գտնուած են գիրի ու գիրքի
սիրով վառուած մարդիկ, որոնք վանքերու և անապատներու մէջ
առանձնանալով տքնաջան աշխատութեամբ և ջանքերով, ընթերցման
ու գրչութեան պարապած են և հիներու գիտութեան ծանօթանալով
զանոնք կամ գիրով կամ ուսուցմամբ իրենց յաջորդներուն փոխան-
ցած են։ Տեսանք թէ ինչպէս վանքերու մէջ վարդապետներ իրենց
շուրջը աշակերտներ հաւաքելով կրցած էին առկայծեալ պահել հա-
յացի կրթութիւնը։
Սակայն կար ասոնցմէ զատ, ուսուցման ուրիշ եղանակ մը, ա-
ռանձնական ուսուցումը, որ ոչ նուազ դեր կատարած է մեր մէջ։
Ասիկա փոքրաւորութիւնն էր։ Հինէն ի վեր բարձրաստիճան և զար-
գացած եկեղեցականք, կաթողիկոս, եպիսկոպոս կամ վարդապետ,
սովորութիւն ունէին յաճախ իբր սպասաւոր և աշակերտ առնել ի-
րինց քով հոգեւոր կեանքի յօժարութիւն ունեցող պատանի մը և
զայն դաստիարակել անձամբ, և պատրաստել կրօնաւորական կոչման։
Այս դաստիարակները դպրոց չունէին այլ առանձին աշակերտներ
որոնք փոքրաւոր կամ ձեռնասուն կը կոչուէին։
Այս հին դրութիւնը պահուած է երկար դարեր և մասնաւորա-
պէս խռովայոյզ ժամանակներու մէջ անիկա գլխաւոր նեցուկը եղած
էր ուսումը առկայծեալ պահելու գոնէ մասնաւորներու շրջանակին
մէջ, ԺԴ. ԺԵ. ԺՁ. դարերու պէս անբարի ժամանակներու մէջ, ուր
այլեւս հասարակաց դպրոցները դադրած էին գոյութիւն ունենալէ և
վանքերու վարդապետարանները՝ այնքան ցանցառ։ Ուսուցման այս
եղանակին կարեւորութիւնը չեշտուեցաւ, մասնաւորապէս այն ա-
տեն երբ օտար քարոզչութեանց հետեւանօք պառակտում մտաւ
և իրարու ընդդիմադիր երկու հատուածներ երեւան եկան Հայ
կղերին մէջ, մին սքոլաստիկ գրականութեան ազդեցութեան տակ
մտքի ուրիշ տրամադրութիւն ստացած և հովանաւորուած ու քաջա-
լերուած լատին կղերէն և միւսը՝ աւանդապահ ու հաւատարիմ իր
դարաւոր եկեղեցիին դաւանութեան և կանոններուն։
Այս երկու դպրոցներուն բախման գլխաւոր վայրը Կ. Պոլիսն էր,
ուր տիրող յուզումները, անարձագանգ չմնացին ինչպէս բոլոր գա-

(1) 1739ին անիկա Կեսարիա քաղաքին մէջ, ապահովաբար ապ-
րուստ հայթայթելու համար կը գրէ Աւետարան մը Ս. Սարգիս եկեղե-
ցիին մէջ։

ւառները՝ նոյնպէս նաև Կեսարիա, վասնզի մայրաքաղաքը միշտ յարաբերութեան մէջ էր Անատոլուի հետ և գրեթէ ամէն քաղաքներէ գաւառացիք, եկած հաստատուած էին Կ. Պոլիս ձեւացնելով հոն խառնարան մը։

Այս խառնարանին մէջ ուր միշտ պակաս չէին վէճեր և պայքարներ, իսկապէս հնար չէր եղած ստեղծագործ աշխատանքով տեւական գործ մը առաջացնել, որքան որ ալ փորձեր եղած ըլլային միտքերը զարգացնելու, մինչ Արեւելքի մէջ Սիւնեաց դպրոցը, Ամրտոլու վանքը, Էջմիածինը և Նոր-Ջուղան, հակառակ շատ աննպաստ պայմաններու, ուսումնական կեդրոններ կը դառնային։ Կեսարիա արեւելեան այս վառարաններուն և Կ. Պոլսոյ միջնասահման վայր մը՝ երկու ազդեցութեանց ալ հաւասարապէս ենթարկուած է։

Ինչպէս Ամրտոլու վարդապետները հոն երեւացին կրթութիւն տարածելու համար և ծիլեր հասուցին, նոյնպէս նաև Կ. Պոլիս իր ազդեցութիւնը ունեցաւ հոն։ Այս ներգործութիւնը շատ բնական էր, վասն զի երկու քաղաքները իրարու հետ միշտ յարաբերութեան մէջ էին։ Կեսարացի առեւտրականները որոնք մայրաքաղաքին մէջ հաստատուած էին և իրենց ձեռներէցութեամբ և ուշիմութեամբ նշանաւոր հանդիսացած, բնական է կը խառնուէին Կ. Պոլսոյ վէճերուն և զանոնք կը փոխադրէին իրենց ծննդավայրը և հոն ալ կը շարունակէին։ Ասոնցմէ մէկն էր կաթոլիկութեան մեծ վէճը որ մեծ համեմատութիւն առաւ ԺԷ. դարուն սկիզբը և բովանդակ Հայ ազգը յուզեց։ Այս վէճը նաև արձագանգ գտաւ Կեսարիա, որ կրեց անոր բոլոր դրական ու բացասական հետեւանքները, որոնցմէ ամէնէն կարեւորը այն մաքառումի, թօթափումի և սթափումի ոգին էր, որ մեր հեղգացած կղերը ցոյց տուաւ ինքնապաշտպանութեան բնազդով, դիմադրաւելու համար այն փորձերուն որոնք կը կատարուէին Հայ Եկեղեցին պառակտելու և Հռոմի հնազանդեցնելու համար։ Եւ ամէնէն առաջ ճիգ ըրաւ ուսեալ կղեր հասցնելու, որպէսզի հաւասար զէնքերով կարենայ մաքառիլ։ Այս գլխաւոր նպատակով էր որ ամէն ոք իր կրցածը ըրաւ, ոմանք վանքերը շէնցուցին, դասատուններ հիմնելով և ուրիշներ առանձնական ուսուցմամբ աշակերտներ հասուցին։

Կեսարիոյ մէջ, ինչպէս պատմեցանք, վանքերու մէջ տեղաւորուած ուսուցիչներու նոյնպէս նաև կը հանդիպինք առանձնական ուսուցիչներու, որոնց մէկ կարկառուն և առաջընթաց դէմքն էր Գրիգոր վրդ. Կեսարացի († 1636), այն որ իր ծննդավայրին եպիսկոպոսական աթոռը գրաւեց (տես էջ 916–918) և իբր կորովի ու գործունեայ եկեղեցական մը, առաջին գիծին վրայ կանգնեցաւ այն անհաւասար կռիւին մէջ որ Հայ Եկեղեցիին պաշտօնեաները մղել պարտաւորուեցան Հռոմի հզօր ու կազմակերպուած պայքարին դէմ։ Անհրաժեշտ իբր «այր գիտնական նրբից եւ արտաքնոց եւ յաղթող ախոյեան ընդդէմ մաքառողաց ճշմարտութեան, եթէ մերասերից եւ եթէ այլոց ազգաց», գրեթէ ամէն ճակատի վրայ պայքարեցաւ կաթոլիկ հաւատածաւալ գործունէութեան դէմ ինչպէս տեսանք, իր ծննդավայրէն փութալով Կ. Պոլիս հարուածելու և մաքառելու համար Յովհաննէս Խուլի և Զաքարիա Վանեցիի պէս կաթոլիկութեան համակիր Պատրիարքները, վազելով Լեհաստան ջախջախելու համար Նիկոլ Թորոսովիչի պէս ազգութեան և կրօնի դաւաճան մը, գրչով մաքառելով և սպառնալով



Մելքիսեդեկ Գառնեցիի պէս ապաշնորհ և իր ազգը և եկեղեցին ընչաքաղցութեամբ վաճառող կաթողիկոսի մը և սաստելով նոյնիսկ Մովսէս Տաթեւացիի պէս վերանորոգիչ կաթողիկոս մը երբան կը սայթաքի։

Գրիգոր վրդ. Կեսարացի, որ քառորդ դարէ աւելի (1607–1633) վարեց Կեսարիոյ առաջնորդական պաշտօնը, առանց սակայն հոն տեւականօրէն մնալու, վասնզի հինգ անգամ Կ. Պոլսոյ Պատրիարքական աթոռը գրաւեց գրեթէ քառասնամեայ (1601–1636) ժամանակամիջոցի մը մէջ, հակառակ անոր որ ժամանակին յուզումներուն խառնուեցաւ իր բոլոր թափով, Կեսարացիներու յատուկ պայքարող, մաքառող և կռուող մարդու նկարագիրով, իր այդ շարժուն ու խռովայոյզ կեանքին մէջ, եթէ չկրցաւ հաստատուն դպրոց մը հիմնել, գէթ կրցաւ հասցնել նշանաւոր աշակերտներ (տես էջ 918) Կեսարիոյ և Կ. Պոլսոյ մէջ, և որոնցմէ գոնէ երեքին Կեսարիոյ մէջ գործունէութիւն ունենալը շատ բացորոշ է։ Այնպէս որ շնորհիւ Կեսարացիին, Կեսարիա այս ժամանակամիջոցին անմասն չի մնար շարժումէն որ ամէն կողմ կը տեսնուէր, և իր աշակերտութենէն հասած անձեր կը կատարեն կարեւոր դեր մը, Հայ մտաւորական կեանքին մէջ կամ կը ծառայեն Կեսարիոյ, իբր հոգեւոր պաշտօնեայ։

Առաջինը այդ աշակերտներուն էր Դաւիթ եպ. որ նոյնիսկ իր կենդանութեան Կեսարիոյ եպիսկոպոսութեան աթոռը բարձրացաւ (1633ին) (վերը՝ 918–9)։ Մէկ ուրիշն էր Ազարիա վրդ. Տարօնեցի կամ Սասունցի, «փիլիսոփայ» և «հլու» մականուանեալը որ աշակերտած էր Կեսարացիին Կ. Պոլսոյ մէջ Մովսէս Տաթեւացիին հետ։ Ասոր խնդրանքով հոն Սիմէոն դպիր Լեհացի 1609 Օգոս. 28ին կ'օրինակէ Մխիթար Գօշի Դատաստանագիրքը և կանոնագիրքը (ՀԱ. 1932, էջ 451)։ Յիշատակարանին մէջ Սիմէոն դպիր զայն կը կոչէ «աշակերտն եւ քաջ եւ արի, հմուտ եւ ճարտար իմաստակն» (Նոյն)։ Այս «փիլիսոփայ» վարդապետը «ոչ կարաց կալ մօտն» Գրիգոր վրդ. Կեսարացիի «ի զազանաբարու սրտնութենէն» իբր թէ և «եկեալ ժամանակ մի առ Մկրտիչ վարդապետին, որ խղճուկ ասեն, կացեալ առ նա»: Բայց «երկիւղէ եւ տրտնջանաց Կեսարացւոյ Գրիգորի ելեալ ի նմանէ եւ գնացեալ մօտ ի Գրիգորն, կացեալ բազում ժամանակս եւ ուսեալ զամենայն հանճարս իմաստից եւ այսպէս յանախապատում խրթնաքարոզ ասաց, [որ] ոչ ոք եղեալ է այժմոյս, որ ի մէկ բանից վերայ մէկ ամիս քարոզէր զՅովհաննու Որոտնեցւոյ մեկնեալն եւ էր յոյժ պահեցող եւ առաքինի, խոնարհամիտ, հեզ եւ հլու, որ առաւել խոնարհ հոգի լինելուն՝ զմականունն Հլու էին եդեալ» (Դարանաղցի, 410):

Այս վարդապետը՝ Երուսաղէմ պահուած ձեռագիրի մը (Թ. 1082) համաձայն 1619–1621ի կը գտնուէր Թոմարզայի վանքը և կը խառնուէր տեղւոյն ուսումնական շարժման (տես էջ 1069)։ Ազարիա վրդ. որ «էր անձանձիր քարոզող» և որ «ժամանակ մի լուսաւորեց զՊուրսայու կողմն, զՆիկիոյ եւ զՆիկոմիդացւոց ուր Հայք կան» (Նոյն), Կիւրլէի կողմերը վանքի մը հաստատութեան ձեռնարկ ըրած է սակայն ձախողած (Նոյն, էջ 411)։ Դարանաղցի կ'ըսէ թէ «Գրիգոր Կեսարացին հանգստութիւն չետուր նմա՝ վարպետս անուն սակին.... եւ առնոյր զծողովեալ ինչս նորա եւ ոչ կամէր տալ գաւազան, զի մինչ իւր ծառայեսցէ, ինչս ժողովեսցէ եւ բերցէ առ ինքն...»:

Ազարիա իբր թէ երբ կ'իմանայ Գր. վրդ. Կեսարացիի գալուստը,

կ'ուզէ «հեռագոյն ուրեք երթալ եւ թաքչել ի նմանէն վասն անիրաւ հարկա-
պահանջութեանն զանձս ոսկոյ եւ արծաթոյ, զոր ոչ բաւականայր տալով»:

Ուստի «գնաց փախստեայ ի յԱնեհոէու կողմն եւ անտի առ եզր ծովին
եւ մտեալ ի նաւ եւ կամէր գնալ ի Տիմիաքն եւ անտի յԵգիպտոս» սակայն
նաւուն մէջ կը մեռնի և ծով կը նետուի (1628)։

Գրիգոր վրդ. Կեսարացիի մէկ ուրիշ աշակերտն էր Յակոբ եպ.
Կուտինացին, քահանայի զաւակ, նախ և առաջ Կուտինայի մէջ ոս-
կերչութեամբ պարապած է և 20 տարեկանին գացած Մուշի Գլա-
կայ վանքը «Ղռունկ» Կարապետ եպ.ի օրով։ Հոն 10 տարի՝ Տ. Յով-
հաննէս եպ.ի առաջնորդութեան և երաժիշտ Տ. Թովմայի առեն կենա-
լէ և հինգ տարի լուսարարութիւն ընելէ վերջ էջմիածին կ'երթայ և
անկէ Երնջակի Ս. Կարապետի վանքը։ Հոն կրօնաւոր կ'ըլլայ Գրիգոր
եպ.էն և մէկ տարի յետոյ Նախիջեւանի մէջ եպիսկոպոս կը ձեռնադ-
րուի 1604ին Մելիքսեդեկ կաթողիկոսէն և 17 տարի Կուտինայէ դուրս
մնալէ յետոյ կը դառնայ հոն (Ա. Ալպօյաճեան, Հայք 'ի Ռումէլի, ձե-
ռագիր, և Աղաւնունի եպ. Բիւրակն, 1900, էջ 371)։

Այս դուրսը գտնուած միջոցին աշակերտած ըլլալ կը թուի Կեսա-
րացի Գրիգոր Պատրիարքին, որմէ 1611ին կոչուած է Կ. Պոլսոյ մէջ
փոխանորդութեան։ Յակոբ եպ. Կուտինացի որ կանոնագիրքը մը փըն-
տըռելու նպատակով Կուտինայէն մեկնած էր և արեւելեան աշխարհի
այնքան վանքերը շրջած էր և նախ եկեղեցական և ապա եպիսկոպոս
եղած, իր բաղձանքին առարկան՝ կատարեալ կանոնագիրքը կը գտնէ
Կ. Պոլիս 1611ին։ Այդ կանոնագիրքը օրինակել տուած էր Ազարիա
Սասունցի, Կիլիկեցի Գէորգ վարդապետի հաւաքածոյ այն ընտիր կա-
նոններէն զոր նոյնիսկ Կեսարացի Գրիգոր վարդապետ ընդօրինակած
էր։ Ի վերջոյ կը յարէ «Եւ տեսի զնայ եւ բազում ուրախութեամբ լցայ, եթէ
այժմ կատարեցաւ խնդրուածս իմ եւ առեալ ի դմանէ օրինակեցի»:

Որչափ որ ինք կ'ըսէ թէ օրինակեցի, սակայն բուն գաղափարողն
եղած է Արսլան դպիր, որ մի ուրիշ յիշատակարանի մը մէջ Յակոբ
եպ.ի համար կ'ըսէ «երիցս երանեալ անյաղթ փիլիսոփային ... որ էր լցեալ
աստուածային շնորհօք, եւ զարդարեալ առաքինութեամբ» (Բիւզանդիոն, Թիւ
214 և 351)։ Գրիգոր Կեսարացի հաւանօրէն այս եկեղեցականը ղրկած
է նաև Կեսարիա իբր փոխանորդ (տես Հայ Վանօրայք, էջ 38) ուր այս
գրոց բրոց եպիսկոպոսը ապահովաբար անգործ և անզբաղ չէ մնացած
քանի որ 1615ին զայն կը գտնենք Կուտինա, ուր իր հետը բերած կա-
րեւոր և ընտիր ձեռագիրներ, ընդօրինակել կու տայ իրեն ընկերա-
ցող Գրիգոր դպիրին և կազմել՝ Մշեցի Պաղտասարին (Աղաւնունի եպ.
Բիւրակն, 1900, էջ 371–2)։ Իսկ մասամբ Կեսարիոյ մէջ և մասամբ այլուր
ծառայող այս աշակերտներէն զատ Գրիգոր վրդ. Կեսարացիի աշա-
կերտած են Մովսէս կաթ. Տաթեւացի և Յովհաննէս եպ. Ուռհայեցի
որոնք Սրապիոնէն իրեն փոխանցուած էին։ Միայն չենք գիտեր թէ
անոնք Կեսարիո՞յ թէ Կ. Պոլսոյ մէջ իրեն աշակերտած են։ Ամէն պա-
րագայի մէջ այս երկուքը Կեսարիոյ ոեւէ ծառայութիւն չեն ունե-
ցած։ Կեսարիոյ համար մասնաւոր նշանակութիւն և կարեւորութիւն
ունեցած է, Յակոբ քհ. Կեսարացի իր եղբօրորդին, միակն որ տեւա-
կանօրէն իր ծննդավայրին մէջ գործած է, հանդիսանալով ժամանա-
կին գլխաւոր մտաւորականներէն մին (Հ. Ն. Ակինեան, ՀԱ. 1909, էջ
371)։ Ան ինքզինքն կ'անուանէ եղբօրորդի «ընդ հոգւոյ եւ ըստ մարմնոյ»:



Անիկա ծնած է Կեսարիա հաւանօրէն ԺԶ. դարուն վերջին քառորդին
և ձեռնադրուած՝ Նպաստաւորութեամբ Ղայսար Չէլէպիին։ Կեսարիոյ Ս.
Սարգիս եկեղեցւոյն պաշտօնեայ՝ իր հօրեղբօր գիրքերը նուիրած է
անոր 1654ին։ Ժամանակակից գրիչ մը դրուատիքով կը յիշատակէ
զայն իբր «ուսումնասէր եւ աղքասասէր եւ ... կատարեալ վարդապետ
եւ որբոց հայր»: «Ուսումնասէր» և «կատարեալ վարդապետ» տիտղոսները
բաւականէն աւելի պերճախօսօրէն կը հաստատեն Յակոբ քհ.ի ուսուց-
չական կեանքը։ Անիկա անշուշտ այս պատճառով ըստ յիշատակագրի
մը ունէր «բազում վարձս... եւ ոչ ոք գիտէ ի մարդկանէ»: «Բնութեամբ հեզ
եւ խոնարհ, աստուածասէր եւ մարդասէր» այս քահանան զբաղած է նաև
գրականութեամբ և թողած է արդիւնքներ «որոնք եթէ իբրև գրա-
կան նշխար անյարգ և աննշան համարուին իսկ, ունին միշտ պատմա-
կան կարեւոր նշանակութիւն» ըստ Հ. Ներսէս վրդ. Ակինեանի (ՀԱ.
1909, էջ 371)։ Իրմէն ծանօթ են Գրիգոր վրդ. Կեսարացիի կենսագրու-
թիւնը, մի քանի տաղեր և գանձեր, մասնաւորապէս Գրիգոր Կեսարա-
ցիի և Մովսէս Տաթեւացիի մահուան առթիւ (Թ. 387 ձեռ. Վիեննայի
Մխիթարեան Մատենադարանի)։

Յակոբ քհ. Կեսարացի հաւանօրէն իր հօրեղբօր գործը շարունա-
կած է ինքն ալ իր կարգին աշակերտներ հասցնելով, առանց որուն
իրեն տրուած պիտի չըլլար «կատարեալ վարդապետ» տիտղոսը։

Դժբախտաբար մեզի անծանօթ կը մնայ թէ որո՞նք են իր աշա-
կերտները և ի՞նչ դեր կատարած են Կեսարիոյ մէջ։ Ինչ որ կը մնայ
և յայտնի է մեզի, անիկա բաւական է ցոյց տալու համար թէ Կեսա-
րիա, սկսեալ ԺԶ. դարուն վերջերէն մինչև ԺԸ. դարուն կէսերը,
Յունեաց դպրոցին վերանորոգութեամբ ստեղծուած շարժումին ան-
հաղորդ և անկէ մեկուսացած չէ մնացած և Ամիթի դպրոցին և անոր
միւս ճիւղաւորումներուն ազդեցութեան կամ ուղղակի ներգործու-
թեան տակ ունեցած է ինքն ալ ժամանակին մտաւոր շարժման մէջ
մասնակցութիւն, եթէ ոչ յատուկ դպրոցով մը գէթ առանձնական
ուսուցման դրութեամբ, որ այնքան սովորական էր այդ ժամանա-
կամիջոցին։

Այս դրութեամբ աշակերտներ հասուցած է նաև ուրիշ եկեղեցական
մը որ Կեսարիայէն կանուխ հեռացած և Երուսաղէմ գացած էր և ապա
Կ. Պոլսոյ մէջ իբր փոխանորդ Երուսաղէմի, Եղիազար Այնթապցիի
գործակից եղած։ Այս եկեղեցականը՝ Յովսէփ վրդ. Ամանօղլու, հա-
ւանօրէն աշակերտ Եղիազար՝ և ուսուցիչ՝ Աբրահամ Կրետացի կաթո-
ղիկոսներու, կը յիշուի «րաբունեաց պետ» և «աստուածաբան վար-
դապետ» տիտղոսներով, ինչպէս տեսանք (էջ 920), իր կեանքին վեր-
ջերը՝ Կեսարիոյ Առաջնորդ եղած էր։

Կեսարիոյ մէջ մտաւորական աշխատանքներու տեսակէտով թէ
ի՞նչ կրցած է ընել, բան մը չենք գիտեր։ Միայն գիտենք թէ ունէր
որդեգիր մը, Մկրտիչ քահանայ, որ հաւանօրէն իր ձեռքին տակ սը-
նած և մարզուած էր։ Տ. Մկրտիչ քհ. գրած է Մխիթար Գօշի Դատաս-
տանագիրքը իր հայրագիրին Յովսէփ վրդ. Ամանօղլուի համար և 1711ին
Գր. Տաթեւացիի «Յովհաննու Մեկնութիւնը», «ի վայելումն հեզահոգի եւ
զուարթոյն առաքինի Տէր Սարգիս Աստուածաբան վարդապետին»։ Այս գործերը
ինչպէս կը տեսնուի ունին նշանակելի հանգամանք, տեսակ մը ու-
սուցչական նկարագիր կրելով։

Տ. Մկրտիչ քհ. Կեսարիոյ Ս. Աստուածածին եկեղեցիին նուիրած է 1728ին, ճաշոց մը (1458ին գրչագրուած) որուն վերջին կազմողին՝ Տ. Աստուածատուրի յիշատակագրութենէն կը հասկնանք թէ այս ուսումնական քահանան նոյն տարին իսկ մեռած և թաղուած է նոյն եկեղեցիին բակը իր «հայրապետին» Յովսէփ վրդ. Ամատ զատէի մօտ։

Յովսէփ վրդ. Ամանօղլու և անոր որդեգիրը և աշակերտը՝ Մկրտիչ քհ. չենք գիտեր թէ Կեսարիոյ մէջ իրենց աշակերտներ ունեցա՞ծ են։

Նաև իրմէ յետոյ չենք գիտեր թէ ուրիշ եկեղեցականներ կրցա՞ծ են այս ուղղութեամբ աշխատանք ունենալ Կեսարիոյ մէջ, սակայն ապահովաբար ուրիշներ ալ ունեցած են իրենց փոքրաւորները, կամ ձեռնասուները, որոնցմէ նշանաւոր մարդիկ հասած ըլլալ չեն թուիր։ Այս փոքրաւորներու կամ ձեռնասուններու դրութիւնը հետզհետէ լքուած ըլլալ կը թուի մանաւանդ 1715էն յետոյ երբ Կոլոտ կը հիմնէր իր վարժարանը Կ. Պոլսոյ մէջ և հոն ինք կը դասախօսէր «թարգմանիչ պատրիարքին» կոչուած Ղուկաս Խարբերդցի, լատիներէն լեզուի հմուտ վրդ.ին հետ, վասնզի ան իր աշակերտները կը հաւաքէր զանազան քաղաքներէ և գիւղերէ և «ճոխացուցանէր զնոսա կրկնակի գիտութեամբ, այսինքն փիլիսոփայականօք եւ աստուածաբանականօք» (Հաննա վրդ. Երուսաղէմացի) և ապա կը ղրկէր զանոնք աստ անդ։ Եւ տեսանք թէ անոնք գացին նաև Կեսարիա ուր հիմնելով վանքին մէջ դպրոց մը վերջ տուին հնօրեայ այս դրութեան։ Ժամանակն էր որ իր նշանները ցոյց կու տար նաև այս մարզին մէջ, և առանձնականը տեղի կու տար դպրոցական ուսուցման։

## Ե.

## «ՎԱՐԺԱՏՈՒՆՔ ՄԱՆԿԱՆՑ»

Հայ Եկեղեցւոյ սպասաւորութեան համար պաշտօնեաներ հասցընելու առաջադրութեամբ ինչպէս որ եկեղեցականները ձեռնասուններու և փոքրաւորներու ուսման հոգ կը տանէին, առանձնական ուսուցմամբ կամ մասնաւոր դասերով, նոյնպէս «եկեղեցւոյ մանկանց» համար ալ ուսուցման յիշատակութեան կը պատահինք։

Առ հասարակ դպիր մը կամ սարկաւագ մը իր տանը կամ եկեղեցւոյ կից սենեակի մը մէջ կը հաւաքէր սահմանափակ թուով աշակերտներ և անոնց կը սորվեցնէր ընթերցանութիւն որպէսզի եկեղեցիին մէջ կարենային փոխասացութիւն ընել կամ շարական կարդալ։ Հակառակ տիրող աննպաստ պայմաններուն որոնք երբեք թոյլատու չէին, զանազան տեղեր կը հանդիպինք յիշատակութեանը դպրատուններու որոնք բացուած էին եկեղեցւոյ մանկանց համար, մասնաւորապէս Հայաստանի մէջ, ԺԷ.դարուն սկիզբէն սկսեալ։ Փոքր Ասիոյ Հայաբնակութեան մէջ բոլորովին անհաւանական չէ որ գէթ նախնական ձեւի մէջ այս կարգի դպրատուններ բացուած չըլլան, աւելի կամ նուազ տեւականութեամբ, երբ մանաւանդ գիտենք թէ Թօգատի մէջ ԺԶ. դարուն վերջերը կար այս տեսակ դպրոց մը (ԲՋՄՊ. 1922, էջ 162) ուր կը սորվեցնէին կարդալ-գրել և երգեցողութիւն։



Կեսարիա, եւս իբր հայաբնակ կեդրոն մը, հաւանական է որ ինքն ալ ունեցած է այս տեսակ հաստատութիւններ, որոնք նախնական նմոյշները կրնան համարուիլ արդի մեր ազգային կամ ծխական դպրոցներուն, որոնք անհատական նախաձեռնութեամբ կը բացուէին և ժողովրդեան կամ մեծատաններու օժանդակութեամբ կը պահուէին։ Դժբախտաբար անոնց յիշատակութեան չենք հանդիպիր։ Սակայն անվարան կրնանք ենթադրել թէ գոնէ պէտք է գտնուած ըլլան քանի մը քահանայ կամ տիրացու որոնք գէթ եկեղեցւոյ պաշտամունքներուն իրենց մասնակցութիւնը բերելու չափ կարողութեամբ մը օժտելու աշխատած են եկեղեցւոյ մանուկները։

Ասիկա անխուսափելի պահանջ մըն էր որուն գոհացում պէտք էր տալ և ապահովաբար տրուած է Կեսարիոյ մէջ, սակայն դժբախտաբար անոնց յիշատակը չէ պահուած։ Սակայն մեծ հաւանականութիւն կայ, օրինակի համար, որ Յակոբ քհ. Կեսարացի —որուն տրուած է «ուսումնասէր» և «կատարեալ վարդապետ» տիտղոսները— ունեցած է Յակոբ քհ. Թօգաթցիի դպրոցին նման վարժոց մը, որուն յիշատակը պահուած էր (ԲՋՄՊ. նոյն)։

Նոյնպէս յիշատակարան մը կը յիշէ 1602ին իբր «վերջին կազմող» Աւետարանի մը (1480ին գրուած) «Ալեքսիանոս սարկաւագ» մը և իր աշակերտները «Սարգիս դպիրը» և «Աստուածատուրը» որոնք «բազում աշխատելով ըզքուղքս կոկեցին»։ Արդ, նկատելով որ Ալեքսիանոս սարկաւագ հաւանօրէն նոյնինքն գրիչ Յակոբ դպիր Չէյթունցիի «զհամշիրակ եւ զհամտեչկէհ գրչութեան զեղբայրն՝ զԱլեքսիանոս դպիրն» է, այսինքն Չէյթունի դպրոցին մէջ պատրաստուած մէկը, որ Յակոբ դպիր Չէյթունցիի հետ Կեսարիա գտնուած է, և անոր պէս գիտակ է գրչութեան արուեստին և այլ ուսումներու և աստիճանով ալ աւելի բարձր, քանի որ Սարկաւագ է, իրաւունք ունիմ կարծեմ ենթադրելու թէ ան սոսկ կազմարար մը չէր և ոչ ալ իր աշակերտները՝ Սարգիս դպիր և Աստուածատուր, սոսկ կազմարարի աշակերտներ, այլ գրոց աշակերտներ։ Որքան որ ալ խնդրական ըլլայ իմ այս կարծիքս, կը խորհիմ թէ բոլորովին անհիմն և ժխտելի չէ։

Ուշիմ Կեսարացիք՝ երբ ամէն կողմ այս տեսակ դպրոցներ կամ դասատուններ կը կազմուէին, չէին կրնար անտարբեր մնալ, մանաւանդ երբ իրենց մէջ ունէին այդ շրջանին Յովհաննէս Հզնեցիի, Աստուածատուր Մշեցիի և մասնաւորապէս Գրիգոր Կեսարացիի պէս եկեղեցականներ։ Հետեւաբար անխուսափելի է որ Կեսարիոյ մէջ ալ ինչպէս այլուր քահանաներ, սարկաւագներ և դպիրներ, միշտ՝ գոնէ սակաւ թուով՝ աշակերտութեան մը համար տուներու կամ եկեղեցիներու շրջափակերու մէջ, կազմակերպած են մանկանց վարժատուններ, փոքր տղաքը հրահանգելու համար ընթերցանութեան։

Երկար ատեն իրերը այսպէս ընթանալէ յետոյ, ժամանակին պահանջներուն բերմամբ, հետզհետէ այս հաստատութիւնները իրենց նկարագիրը փոխեցին, վասնզի ընթերցանութիւնը որ «վասն մանկանց եկեղեցւոյ» միայն անհրաժեշտութիւն մըն էր, առօրեայ ընթացիկ և շուկայի կեանքին մէջ ալ կամաց կամաց պէտք մը դառնալ սկսաւ։

Առեւտրականներ, ինչպէս նաև արհեստաւորներ երբ ըմբռնեցին

գրել-կարդալ գիտնալուն կարեւորութիւնը որ հին ատեն այնքան զգալի չէր եղած, այն ատեն կրթութիւնը առաւ աշխարհական ուղղութիւն և բացարձակ կերպով իր կրօնական գոյնէ մերկացաւ։ Կարդալ գիտնալը որ միայն եկեղեցականաց անհրաժեշտ կը համարուէր դադրեցաւ այլեւս մասնաւոր մենաշնորհ մը ըլլալէ և արհեստաւորներ, խանութպաններ և մանրավաճառներ իրարմէ խանութներու և կրպակներու մէջ կարդալ սորվիլ սկսան։ Երբեմն ալ խաներու անկիւնները սենեակներու մէջ պատուելիներ կային, շատ անգամ շլացուցիչ տիտղոսներով պատուուած(1), որոնցմէ երկիւղածութեամբ և պատկառանօք կարդալ սորվելու համար կը հաւաքուէին արհեստաւորներու աշակերտներ, որոնք այս կերպով իբր թէ կրթութիւն կ'առնէին։ Կ. Պոլսոյ մէջ Երեմիա Քէօմիւրճեանի 1660ին, Մխիթար Սեբաստացիի 1701ին, Աստուածատուր Աղաւնի Ջուղայեցի վրդ.ի 1707ին և վերջապէս Սիմէոն Երեւանցի վրդ.ին 1752ին Գալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ շրջափակին մէջ կրթարաններ հաստատելու փորձերը շատ մեծ տարբերութիւն մը չունէին խաներու մէջ բացուած դասարաններէն։

Այս մասնաւոր և անկազմակերպ ուսուցման միջոցներուն հետ, միակ կրթական կազմակերպուած հաստատութիւնը որ ազգը ունէր այդ ժամանակներուն մէջ, էր Կոլոտի Սկիւտարի մէջ հիմնած կղերանոցը, որ իր աշակերտը Նալեան 1741ին Սկիւտարէն Գում-Գաբու փոխադրած էր։

Այդ վարժարանին վերջին փայլ մը տուաւ Զաքարիա Պատրիարք Կաղզուանցի (1773-81 և 1782-1799) որ Կոլոտի և Նալեանի օրինակին հետեւելով անձամբ այդ վարժարանին մէջ դասախօսութիւններ ըրաւ։

Այդ միակ ճշմարիտ ուսումնարանէն զատ հոս հոն կը յիշուին նաև անհատական մանկատուններ որոնք Տէր Թոդիկեան դրութեամբ կը կառավարուէին, բայց ասոնք չէին կրնար հանրային հաստատութիւններ և ոչ ալ ճշմարիտ կրթարաններ նկատուիլ։

Կեսարիա, որ իր վանքերուն մէջ ունեցած էր կրթարաններ, և քահանաներու, սարկաւագներու և դպիրներու դասարաններ, անշուշտ ունեցած է նաև իր պատուելիները որոնք կը պահէին դասարաններ, ուր Հայ տղաք կարդալ-գրել կը սորվէին, և ուսման կատարելութիւնը համարուած Նարէկը կը կարդային։

Այսպէս 1754ին կը յիշատակուի Անտրիանուպոլսեցի Պետրոս դպիր Գէյլէր անուանեալ «զվարդապետն մանկանց», որդին' արեւելեան Վայոց ձորեցի Պարոն Սէհէրկիւլին։ Այս անձը' որ ապահովաբար Էֆքէրէ ապրած է և շփում ունեցած' Տ. Պարսամ քհ.ի սերունդին հետ, անոնց աշակերտներէն Տ. Յակոբ քհ.ի գրել տուած է «Մեկնութիւն Սաղմոսաց Վարդան վարդապետի» գործը։ Տ. Յակոբ քհ. իր յիշատակարանին մէջ ուրիշ տեղ մըն ալ «իմաստախոհ եւ յոգնահանճար տիրացու Պետրոս բանաստէր» կը կոչէ զայն(1)։

Այս անձը' իբր «վարժապետ մանկանց» անշուշտ ունէր իր շուրջը աշակերտութիւն մը, որոնց կը դասախօսէր ապահովաբար գրել-կարդալ։ Այս երեւոյթը անշուշտ իր տեսակին մէջ միակը չէր, և իրեն նման ուրիշ վարժապետներ ալ կային Կեսարիոյ և շրջակայից մէջ որոնց անունները դժբախտաբար մեզի չեն հասած։ Սակայն այս մէկ հատիկ փաստն իսկ բաւական է համոզելու համար որ բոլորովին անգոսնուած չէր գրել-կարդալու ուսուցումը Կեսարիոյ մէջ, որ կը շարունակուէր առանց կանոնաւոր դպրոցներու, վասնզի պետութիւնը արտօնած չէր հանրային նախակրթարաններու բացումը ո՛չ Յունաց և ո՛չ Հայոց, վասնզի հակառակ պէտքին և կարեւորութեան' որ ըմբռնած էին քրիստոնեայք—ինչպէս կ'երեւայ— դեռ իսլամներու կատաղութիւնը ի նախանձը չգրգռելով, այս տեսակ հաստատութիւններ հիմնելու յարմար մէկ ձեւը չէին կրցած գտնել։

Քրիստոնեայ ազգերը ի վերջոյ իրենց կրթական հաստատութիւններուն, եկեղեցիներու յարակից մանկանոցներու' իսլամ մէտրէսէներուն' նմանութիւն տալով, կրցան Սուլթան Սէլիմ Դ.էն, նոյնիսկ իր գահակալութեան տարին (1789), արտօնութիւն ստանալ ծաղկոցներ և ուսումնարաններ բանալու (Հ. Ասատուր, Կ.Պոլսոյ Հայ եւ Յոյն դպրոցները 1790է առաջ, ԾԱՂԻԿ, 1903, թ. 4)։

Սէլիմ Դ.ի գահակալութիւնը արդէն Օսմ. պետութեան համար դարաշրջանի մը սկիզբն է։ Եաւուզ Սէլիմ Ա. (1512-1520) Եգիպտոսի տիրելով և խալիֆայութիւնը յափշտակելով, պետութեան և կրօնի սերտ միութիւն մը ստեղծած էր, իսկ Սէլիմ Գ. (1789-1807) առաջին Սուլթանը եղաւ որ պետութեան քայքայումը տեսնելով, ձեռնարկեց բարեկարգական այնպիսի տնօրինութիւններու, որոնք պետութիւնը գէթ դոյզն չափով մը աշխարհականացուցին։

Սէլիմ Գ. պետութեան քայքայուած բանակը կազմակերպելու համար Եէնիչէրիութենէ դուրս կազմակերպեց Նիզամիյէ զօրքը, շինեց վառօդարաններ և մարզարաններ, ինչպէս նաև կարգաւորեց զինուորական աստիճանները։ Ան հիմնեց նաև թուղթի գործարան (Հիւնքեար Իսկելէսի) և տպարան (Սկիւտար)։ Սակայն իր գլխաւոր և ամենանշանակելի գործն էր նախակրթութեան տուած մեծ նշանակութիւնը և կարեւորութիւնը, որմէ օգտուեցան նաև Յոյները և Հայերը, իրենց եկեղեցիներու քով կազմակերպելով թաղային վարժարաններ, որոնք խոշոր յեղաշրջութիւն մը պիտի մտցնէին մեր կեանքին մէջ, բազմացնելով գրել-կարդալ գիտցողներու թիւը, որոնք այնքան սակաւ էին երբեմն։

---

(1) Այսպէս 1766 Մայիս 11ին պատահած երկրաշարժէ մը Կ. Պոլսոյ Վէզիր խանը կը փլի և ուր ի միջի այլոց, կը մեռնի «Տիրացու Գէորգ Կեսարեան, իմաստասէր յոյժ և դպրութեանց ամանց ազգաց իսկ տեղեակ», Սարգիս դպիր Յովհաննէսեանի բառերովը։

(1) Հետաքրքրական է որ միեւնոյն քահանան միեւնոյն ձեռագիրը գրած է 1752ին' երկու տարի առաջ «ի վայելումն իմաստախոհ և գրասէր Պետրոս վրդ.ի» ըստ ընթերցման Տրդատ եպ. Պալեանի, որ կը գտնենք կարօտ սրբագրութեան։ Հաւանօրէն «վարժապետ» պէտք է կարդալ։ 1752ին գրուած ձեռագիրը կը գտնուէր Ս. Կարապետի վանուց նոր մատենադարանը 32 թուահամարով, մինչ 1754ին գրուածը Երուսաղէմ 913 թուահամարով։

Մկրտիչ ամիրա Միրճանեան — որ Զաքարիա Պատրիարքի կոնդակովը «Շնորհք» մականունը ստացաւ և աւելի ծանօթ է Շնորհք Ամիրա անունով — Սէլիմ Գ.ի արտօնութենէն օգտուելով, Պատրիարքական Մայր-եկեղեցւոյ իբր թաղային վարժարան, 1790ին կառոյց Մայր-վարժարանը, որուն յաջորդեցին ուրիշներ տարբեր թաղերու մէջ։

Այսպէս Հայոց մէջ հասարակաց կրթութիւնը ստացաւ զարկ, շնորհիւ Սէլիմ Գ.ի պետութեան մէջ ներմուծած նոր ոգիին և ձըգտումներուն, որոնց իրագործման համար այս Սուլթանը կը կարօտէր առաջնորդներու և վարպետներու, որոնք ճարուեցան Եւրոպայէն։ Ան երկրաչափներ, սպաներ, դասատուներ, զինուորներ և գործաւորներ բերել տուաւ Շուէտէն, Ֆրանսայէն և Անգլիայէն։ Այս կերպով Եւրոպա խաղաղօրէն թափանցել սկսաւ 'ի Թուրքիա, մանաւանդ երբ Սուլթան Սէլիմ Գ. իր երկիրը եւրոպական ժամանակակից մտքին հաղորդ ընելու համար ֆրանսերէնի ուսուցումը պարտաւորիչ ըրաւ պետական վարժարաններու մէջ և բազմաթիւ գիրքեր թարգմանել տուաւ եւրոպական լեզուներէ։

Հայերը՝ այս մարզին մէջ ալ հետեւեցան պետական օրինակին և իրենք ալ ընդգրկեցին այս լեզուին ուսուցումը իրենց վարժարաններուն մէջ։

Մինչև այն ատեն օտար բաղերաններու հետ մրցելու և վիճելու համար, լատիներէն սորվող եկեղեցականներ և մի քանի աշխարհականներ միայն ունեցած էին ք։ Սակայն լատիներէնը աւելի նպաստած էր ժամանակին զարգացեալ համարուած այդ անձերը սահմանափակելու կրօնական վէճերու և աստուածաբանական ընթերցումներու անձուկ սահմանին մէջ, քան թէ անոնց առջև պարզելու աւելի լայն հորիզոններ։ Լատիներէնէն յետոյ կու գար Յունարէնը՝ որուն մասնաւորապէս հետեւած ըլլալ կը թուին ԺԸ. դարուն վերջին կիսուն Կ. Պոլսոյ մէջ փայլող մի քանի ուսումնական անձեր, ինչպէս Գէորգ դպիր Կեսարացի (1737–1812), Մատթէոս դպիր Պալաթցի (1740–1825), Գրիգոր դպիր Գապասագալեան Կեսարացի, որոնք իրենց այդ հմտութիւնը չեն ուզած ժամանակակից ոգւոյն ի սպաս դնել և աւելի աշխատած են կրօնական նպատակներով օգտուիլ յունարէնէն։ Միակ բացառութիւնը կը կազմէ Գապասագալեան, որ արուեստ մը իւրացընելու, երաժշտութեան հմտանալու և յոյն երաժշտութիւնն ալ ուսումնասիրելու համար գործածած է իր լեզուագիտութիւնը։

Իսկ առօրեայ կեանքին մէջ իբր օտար լեզու գոյգն գործածութիւն մը ունէր իտալերէնը, որ Արեւելքի մէջ առեւտուրի լեզուն էր, Վենետիկցիներու օրերէն սկսեալ։ Սէլիմ Գ.ի կարգադրութեամբ Ֆրանսերէնը կը դառնար մտքի լեզուն և կը տիրապետէր Արեւելքի մէջ, ճիշդ այնպիսի շրջանի մը ուր Ֆրանսա նոր գաղափարներու առաջնորդը և ուսուցիչը դառնալէ յետոյ աշխարհի՝ իր մեծ յեղափոխութեամբ, Եւրոպայի ամէնէն մեծ հմայք ու հեղինակութիւն ունեցող պետութիւնը եղած էր շնորհիւ Նաբոլէոն Ա.ի։

Հետեւաբար Արեւելքի մէջ բոլոր ազգերու, ինչպէս նաև Հայոց, կրթական գործին մէջ ինքնին մտաւ մեծ յեղաշրջում մը։ Ուսման շրջագիծը ընդարձակուեցաւ և ստացաւ այնպիսի նկարագիր մը և ուղ-



ղութիւն մը, որուն գլխաւոր հետեւանքներէն մէկը եղաւ որ ուսումը կամ գրոց աշակերտութիւնը, եկեղեցականներու, դպիրներու, և տիրացուներու մենաշնորհը ըլլալէ դադրեցաւ և աշխարհականներ ալ խառնուեցան ուսումնական շարժման։

Դարու ոգին էր որ կու գար իր տիրապետութիւնը դնել նաև Հայոց վրայ։ Ասիկա անխուսափելի հարկն էր որ պիտի մատուցանէր Հայ ցեղը, պատմութեան և քաղաքակրթութեան։ Ազգային վերածընունդը սկսած էր։

Յոյները՝ արդէն այդ ճամբուն վրայ մեզի կանխեր էին և մտալուտ ընդհանուր ապստամբութիւնը՝ օծումը և նուիրագործութիւնը պիտի ըլլար նաև իրենց քաղաքական վերածննդեան, որուն արժանի էին ամէն կերպով։ Հայերը՝ հակառակ անոր որ անոնց մօտը ապրած էին և ունեցած՝ իրենց մէջ յունարէնի հմուտ անձեր, չէին ազդուած յունական մտքէն և շարժումէն, սակայն խորապէս ազդուեցան ֆրանսական միտքէն և սկսան իրենց մտաւորական կեանքին այնպիսի ուղղութիւն մը տալ, որ ազգային ինքնագիտակցութիւնը զարգանայ։ Սակայն ֆրանսական միտքին նուաճումը Արեւելքի մէջ, հակառակ անոր որ շատ արագ ընթացք մը ունեցած էր, սակայն անոր թափանցումը մինչև ներքին գաւառները, կը կարօտէր դարձեալ երկար ժամանակի։

Կեսարիա, դժբախտաբար թրքախօս դարձած թրքական բռնութեան հետեւանօք, բաւական ուշ պիտի կրէր Կ. Պոլսոյ մէջ խմորուող նոր ձգտումներուն ազդեցութիւնը։

Կ. Պոլիս՝ հակառակ իր կեդրոնի հանգամանքին ԺԹ. դարուն սկիզբները, ինքն իրեն հազիւ կը բաւէր և ուրիշ շրջանակներու օգնելու վիճակին մէջ չէր։ Հետեւաբար գաւառները ինչ որ կրցած են ըրած են իրենց միջոցներով, ազդուելով Կ. Պոլսոյ օրինակէն, որ իսկապէս թելադրական եղած է բոլոր գաւառներու համար։ Այս ազդեցութեան մէջ մեծ դեր կատարած են այն հարիւրաւոր և հազարաւոր պանդուխտները որոնք գաւառներէն համախռնուած էին Կ. Պոլիս։ Անոնք ինչ որ անձամբ կը տեսնէին Կ. Պոլսոյ մէջ նախաձեռնարկ կ'ըլլային տարածելու իրենց գաւառին մէջ։ Այս պանդուխտները՝ եղած են ռահվիրաները իրենց ծննդավայրերու կրթական գործին կազմակերպութեան, տեսնելով Կ. Պոլսոյ ջանքերը։

Շատ հաւանօրէն այս ներգործութեամբ է, որ Կեսարիոյ մէջ ալ թաղային վարժարաններու նմոյշին վրայ նոյնիսկ անցեալ դարու սկիզբէն գոյութիւն առնել սկսած են թաղային վարժարաններ որոնց հաստատութեան ճշգրիտ թուականները չենք գիտեր դժբախտաբար։ Ամէն պարագայի մէջ անոնց հիմնադրութիւնը 1820ական թուականներէն աւելի ուշ մնացած չի կրնար ըլլալ։

1834ին չինուած վիճակագրութիւն մը (պահուած Կ. Պոլսոյ Պատրիարքարանին մէջ)՝ որ խիստ հետաքրքրական վաւերագիր մըն է, ցոյց կու տայ Կ. Պոլիսէն դուրս բովանդակ Թուրքիոյ մէջ այս թուականին գտնուած վարժարաններու թիւը։ Այս ցուցակը ընդհանուր գաղափար մը կրնայ տալ և համեմատութեան առարկայ ընել Կեսարիոյ կրթական շարժումը միւս գաւառներու հետ, ուստի զայն նոյնութեամբ հոս մէջ կը բերեմ։

1. Էտիրնէ քաղաքին մէջ 1, Փիլիպէ 1 . . . . . . . . . . . . . = 2
2. Թէքիրտաղ քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . = 1
3. Վառնա չունի . . . . . . . . . . . . . . . . . . . . . . = —
4. Շումնի քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . . . = 1
5. Նիկոմիդիա քաղաքին մէջ 1, Արմաշ՝ վանքի ուսումնարան, Ատաբազար՝ 4, Սէօլէօզ 2, 31 գիւղերու մէջ մէկ մէկ վրժ.ն = 38
6. Պրուսա քաղաքին մէջ մէկ, Եէնիճէ գիւղ 1 . . . . . . . . = 2
7. Իզմիր քաղաքին մէջ 1, Մանիսա 2 . . . . . . . . . . . . . = 3
8. Պանտրմա քաղաքին մէջ 1, Մահալըճ 1, Քիրմասդը 1, Պալըքէսիր 1, Էտինճիկ 1, Էրմէնի քէօյ 1 . . . . . . . . . . . = 6
9. Կուտինա քաղաքին մէջ 1, Պիլէճիկ 1 . . . . . . . . . . = 2
10. Մարզուան քաղաքին մէջ 1, Ամասիա 3, Հաճը գիւղ 1, Քէօփրիւ 1, Պաֆրա 1 . . . . . . . . . . . . . . . . . . . . = 7
11. Թոգատ քաղաքին մէջ 2, Նիկսար 1, Զիլէ 1, Հերէկ 1 . . = 5
12. Թամզարա քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . = 1
13. Գաղատիա քաղաքին մէջ 1, Սթանոս 1, Պօլու 1, Տէվրէկ 1, Սիվրիհիսար 1, Դարահիսար 1, Աքշէհիր 1, Գոնիա 1 . . . = 8
14. ԿԵՍԱՐԻԱ քաղաքին մէջ 2, Թալաս 1 . . . . . . . . . . . = 3
15. Սեբաստիա քաղաքին մէջ 4 . . . . . . . . . . . . . . . . = 4
16. Ձնգուշ և Ատիշ (չունին) . . . . . . . . . . . . . . . . . = —
17. Շապին Գարա-Հիսար քաղաքին մէջ 2, Անտրէաս 2, Բալք 1 = 5
18. Երզնկա քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . . = 1
19. Ակն 2, Ապուչէխ 1, Կամրկապ 1, Կարուչլայ 1, Բինկեան 1, Լիճ 1, Լարվէր 1 . . . . . . . . . . . . . . . . . . . . . = 8
20. Արաբկիր քաղաքին մէջ չկայ, Մաշկերտ 1 . . . . . . . . . = 1
21. Եդեսիա քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . . = 1
22. Չարշամպա քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . = 1
23. Տրապիզոն քաղաքին մէջ 1 . . . . . . . . . . . . . . . . = 1
24. Կարին քաղաքին մէջ 2, Ախլցխա 1, Արտուին 1, Ցօխրապակերտ 1 . . . . . . . . . . . . . . . . . . . . . . = 5
25. Վան քաղաքին մէջ 3 . . . . . . . . . . . . . . . . . . = 3
26. Ածպըդեր 1, Աղվանիս 1, Զըտլխի 1, Ծապէրի 1, Արգավիս 1 = 5
27. Արղընի . . . . . . . . . . . . .
28. Բաբերդ . . . . . . . . . . . . .
29. Բալու . . . . . . . . . . . . .
30. Դադէմ . . . . . . . . . . . . .
31. Մուշ . . . . . . . . . . . . . . չունին . . . . . = —
32. Պուլանըխ . . . . . . . . . . . .
33. Խնուս . . . . . . . . . . . . .
34. Կէօքսու . . . . . . . . . . . . .
35. Մանրավանից . . . . . . . . . .

Համագումար 114

Բոլոր գաւառներու մէջ հաստատուած վարժարաններու գումարը Միացեալի կողմէ 1910–1911 թուականներուն գաւառներու մէջ բացուած վարժարաններու գումարէն իսկ պակաս է, որով 1834էն մինչև 1914 ութսուն տարուան շրջանի մէջ տեսնուած զարգացումը անհա-



մեմատ է։ Այս ցուցակը միանգամայն կրթական գործին գաւառներու մէջ առաջացման ուղին ցոյց կու տայ։ Հոն կը տեսնենք թէ Կ. Պոլիս կը կազմէ կեդրոնը և անոր ամէնէն մօտ վայրերն ամէնէն շատ դպրոց ունեցող թեմերն են։

Յետոյ ծովեզերքներէն դէպի ցամաքամասերն առաջացած է հոսանքը և Կ. Պոլսոյ հետ աւելի շատ յարաբերութիւն կամ մայրաքաղաքին մէջ շատ պանդուխտ ունեցող գաւառներու զարթնումը աւելի կանուխ եղած է։

Կեսարիա, ինչպէս կը տեսնուի երկու թաղային վարժարան ունէր քաղաքին և հատ մը մերձակայ Թալասի մէջ, 1834ին։ Այս վարժարանները որ եկեղեցիներու առընթեր երեւան եկած էին, շատ մեծ զարգացում մը չէ որ կու տային։

Մինչև ԺԹ. դարուն առաջին քառորդին և քիչ մըն ալ աւելի վերջը, նոյնիսկ Կ. Պոլսոյ մէջ, քերական, հեգարան, կամ փոքր Սաղմոս կամ Գործոց, Սաղմոս, Նարեկ, գիր, ռախամ (=թուաբանութիւն) և տիրացութիւն, նիւթերը կը կազմէին այդ վարժարաններուն։ Առաջին անգամ Սաղմոսէն, Գործոցէն և Նարեկէն դուրս ընթերցարանի հեղինակութիւնը Վենետիկի Մխիթարեաններէն Հ. Մինաս վրդ. Բժշկեանի կը պարտինք, որ 1824ին տպած է Վարժութիւն Մանկանց անուն խիստ շահեկան ընթերցարանը որ 1840–1860ի շրջանին Կ. Պոլսոյ վարժարաններուն մէջ հազիւ կրցած էր տեղաւորուիլ և պատւոյ տեղը գրաւել, սակայն մինչև Կեսարիա թափանցած ըլլալուն կը տարակուսիմ։

Ժամանակին մտայնութեամբ, այս հաստատութիւնները շատ մեծ հոգածութեան մը կամ խնամքի մը առարկայ չէին և շատ անգամ անոնք կախում ունէին եկեղեցիներու միւթէվէլլիներուն քմահաճոյքէն։

1860էն առաջ և նոյնիսկ անկէ տարիներ վերջն ալ երբ Ազգ. Սահմանադրութիւնը տակաւին գործադրուած չէր ներքին գաւառներու մէջ, ինչպէս ուրիշ շատ մը գաւառներու՝ Կեսարիոյ և իր շրջակայքի ամէն մէկ եկեղեցի մէկ կամ երբեմն մէկ քանի, չօջերու քմահաճոյքով կը կառավարուէր։ Չօջը որ կը վարէր եկեղեցին, կը մատակարարէր նաև անոր քովը բացուած դպրոցը, և ինչպէս առաջինին, նոյնպէս երկրորդին վերհսկիչն էր։ Ինչպէս եկեղեցիներու մատակարարութիւնը կամաւոր նուէրներով, այսինքն առաւելապէս գանձանակի և պնակի հասոյթներով կը հոգացուէր, դպրոցներու պէտքերն ալ հոգալու համար դրութիւն մը գտնուած էր։

Ուսուցիչներու թոշակը կը հայթայթուէր աշակերտներէն գանձուած ամսավճարներով՝ Կեսարիոյ քաղաքին մէջ, կամաւոր նուէրներով շրջակայ աւաններու մէջ, իսկ հացահատիկներով՝ գիւղերու մէջ (Եղիազարեանի ձեռագիր)։

Եւ եթէ պատահէր որ ժողովուրդը անհոգութենէ տարուած մոռնար վճարել իր աշխատաւորներուն վարձքը, քանի մը հարուստներ մէկտեղ կը ժողվուէին և ներքին հանգանակութեամբ մը մասամբ կամ լիապէս կը գոհացնէին զրկուած ուսուցիչը (Նոյն)։

Վերջապէս աւելցնենք թէ ամէն մէկ դպրոց միակ ուսուցիչ մը ունէր, որ սովորաբար կ'ըլլար կամ լուսարար, կամ ուրիշ մը, որ նոյնպէս իր կեանքը կը կապէր իր գործին հետ։ Այնպէս որ մինչև

*1870ական թուականները, ինչպէս Թուրքիոյ ներքին գաւառներու առանց բացառութեան գուցէ ամէնը, նոյնպէս Կեսարիոյ կրթական գործը, նախնական բնոյթ ունէր։ Մասնաւոր անհատներ՝ տուներու մէջ կամ խաներու անկիւնը, իսկ խալֆա կոչուած վարձուած ուսուցիչներ եկեղեցիներու կուշտը կառուցուած աւելի ծածքի մը տակ քան շէնքի մը մէջ կ՚ուսուցանէին։*

*Իսկ վանքերը և առաւելապէս Թոմարզայի Ս. Աստուածածին ու Էֆքէրէյի Ս. Կարապետ վանքերը, կը յաճախէին չափահաս աշակերտներ, ստանալու համար ինչ որ այն ատեններ կը նկատուէր բարձրագոյն կրթութիւն։*

«1880ական թուականներէն առաջ Կեսարիոյ եւ շրջակայքի դպրոցները խղճալի միօրինակութիւն մը ունէին թէ իրենց արտաքին երեւոյթով եւ թէ մանաւանդ իրենց ներքին ուսումնական ընթացքովը:

Ամէն մէկ եկեղեցիի կողքին շինուած աւելի կամ նուազ ընդարձակ ու միշտ վատառողջ ծածքի մը տակ կը թխմուէին աշակերտներ: Անոնք տախտակամածին վրայ ծնկաչոք կը նստէին. ծալլապատիկ նստիլը լրբութիւն կը համարուէր, իսկ գրասեղանի ու նստարանի դրութիւնը տակաւին անծանօթ էր բոլորովին:

Աշակերտներուն դիմացը, ամպիոնի նմանող բարձունքի մը վրայ կը նստէր այն զոր հայախօսները *տիրացու*, թրքախօսները *խալֆա* կ՚անուանէին, իսկ այժմու յորջորջումով ուսուցիչ կ՚ըսուի: Անոնք սովորաբար կ՚ըլլային տարեց մարդիկ, հագուած երկայն վերարկու եւ դրած ֆէս մը՝ սեւ ապարօշով եզերուած: Անոնք իրենց ձեռքը ունէին երկայն գաւազան մը, երբեմն ճշմարիտ բիր մը: Այս չէր բաւեր. ուսուցչին գլխուն վերեւ, պատէն կախուած էր *փալախան*, Գիյեօթինի սպառնացայտ իր երեւոյթով:

Երբ պատուելիին կապարեայ նայուածքը բաւական չըլլար զարհուրեցնելու, ու կարգի հրաւիրելու աշակերտը, նախ բռունցքը, յետոյ բիրը անոր օգնութեան կը հասնէին, իսկ երբ անոնք ալ անզօր մնային սանձելու տղուն անսաստութիւնը, փալախան վար կ՚իջնէր իր բարձրաւանդակէն: Ծնողքները ոչ թէ միայն չէին տրտնջար ուսուցիչներու անգթութեանց դէմ, այլ ընդհակառակն ինքզինքնին պարտաւոր կը համարէին շնորհակալութիւն յայտնելու ուսուցիչին, երբ իրենց զաւակը իրիկունը տուն դառնար ուռած ձեռքերով, կապուտցած զիստով, թռած եղունգով, կամ թուլ միսով մը որուն վրայ գաւազանին ձեւը խարանուած ըլլար:

Եւ ի՞նչ իրաւունք ունէին դիտողութիւն ընելու, չէ՞ որ առաջին օրը երբ իրենց քնքոյշ զաւակը դպրոց կ՚առաջնորդէին, կ՚ըսէին ուսուցիչին. «*միսը քեզի, ոսկորը ինծի*»։

Եւ արդէն այդ երջանիկ ժամանակներուն ուսուցիչի մը կարողութիւնը իր անգթութենէն կ՚ը չափուէր: Այսպէս եղած են բազմաթիւ պարագաներ երբ աշակերտներ ծեծի տակ նուաղած, խլացած, նոյնիսկ մեռած են:

Կը ճանչնամ հին ուսուցիչ մը, որ մինչեւ անգամ բարեկամական շրջանակի մը մէջ պարծանօք յայտարարած է թէ երկու տղայ ծեծի տակ սատակամահ ըրած, երեք ուրիշներ խլացուցած եւ չորս տղեկներու ձեռքին մասերը հաշմած է քառասուն տարուան իր պաշտօնավարութեան միջոցին: Եւ սակայն նոյնիսկ այս տեսակ ծայրայեղ պարագաներու մէջ ծնողք ոչինչ ըրած են, եթէ ոչ առաւելն պղատոնական բողոք մը այն ջոջին որ ուսուցիչին թիկունք տուած է:

Ծեծի ու խոշտանգումի այս անագորոյն միջոցները սակայն ոչ թէ միայն ամենափոքր չափով իսկ չեն զգաստացուցած տղաքը, այլ ընդհակառակն, նախ



ուծացուցած են զանոնք դպրոցէն: Արդարեւ ահագին համեմատութիւն մը կը կազմէ թիւն անոնց որոնք իրենց ուսուցչին վարմունքը անհանդուրժելի գտնելով դասալիք եղած են եւ դատապարտուած են մնալու անգրագէտ: Եւ յետոյ անոնց մէջ որ ստիպուած էին կուրծք տալու դպրոցական այդ անհանդուրժելի ռէժիմին ուրած է՝ ուսուցիչին քթին խնդալու եւ անոր զայրոյթին մէջ չար վրէժի յագեցում մը փնտռելու ախորժակը: Քինախնդրական այդ ոգին յաճախ սմսեղուկ, իսկ երբեմն նոյնիսկ վտանգաւոր խաղի յղացումներ ընելու մղած է տղաքը. խաղեր որոնց հեղինակները ընդհանուր առումով անյայտ մնացած են այն բնական պատճառով որ ուսուցիչին հեւասպառ քննութիւնները ապարդիւն թողելու եւ անոր անճարակութեան վրայ խնդալու հակամիտութիւնը կը մղէր զանոնք միեւնոյն ատեն գաղտնապահ ըլլալու նոյնիսկ ամենախիստ պատիժներու տակ» (*Եղիազարեանի Ձեռագիր*)։

*Դժբախտաբար հոս կ՚ընդհատուի ձեռագիրը և չեմ կրնար այլեւս օգտուիլ տեսութիւններէն անոր որ ապրած է այն կեանքը որ կը նկարագրէ։ Սակայն այս տողերն ալ բաւական են որոշ չափով ցոյց տալու թէ ինչ էր դպրոցներու վիճակը այդ թուականներուն Կեսարիոյ և շրջակայից մէջ։ Այս պատկերը ընդհանուր էր և գրեթէ ամէն տեղ այս էր կացութիւնը։* Թաքի, Փալախայի և Երկուշաբթի օրուան դատաստաններու *վայրենութիւնները իշխող էին բոլոր մեր տարրական նախակրթարաններուն մէջ։*

*Նոյնիսկ Կ. Պոլսոյ մէջ անոնք ի պատիւ էին մինչև 1880ական թուականները, և թող զարմանալի չթուի եթէ ըսենք թէ Կ. Պոլսոյ Աթէնքը ըլլալու փառասիրութեամբ սնքացող Օրթաքէօյի թաղային վարժարանին մէջ 1857–1859ին թաթերը,* չպուխները *և* Փալախաները *վերցնելու փորձ մը, ոտքի հանած է թաղին բնակչութիւնը պահանջելու համար որ վերահաստատուի ծեծը վարժարանին մէջ, որպէսզի տղաք անկիրթ ու անոպայ չմեծնան։ Զարմանալի միամտութիւն որ եթէ գաւառներու մէջ ալ տարածուած և միտքերու մէջ այնքան տեղաւորուած էր, պէտք չէր շատ տեւել։*

*Սակայն ինչպէս շատ ճիշդ կերպով դիտած է Եղիա Եղիազարեան անոնց հակազդեցութիւնը ուսանող սերունդին վրայ չափազանց ծանր եղած է և ժխտական արդիւնքներ առաջ եկած և շատ մը տղաք դըպրոցէն սոսկացած են։*

*Տիար Հայկ Ինայէթեան ինքն ինծի պատմեց թէ իր ծննդավայրին՝ Կէրմիրի Պարթեւեան վարժարանը ձգելու ստիպուած էր, հակառակ իր բուռն եռանդին և աշխատասիրութեան, վասնզի իր մօրը շատ բարեմիտ դիմումը իր ուսուցիչին անոր առիթ ընծայած էր գործադրելու իր տեսակին մէջ անօրինակ ու նուաստացուցիչ պատիժ մը, որ պատճառ եղած էր որ ինքն վարժարանը թողու։*

*Մայրը միամիտ կին, պատահաբար աւանին մէջ հանդիպելով իր տղուն վարժապետին, անկէ կը խնդրէ որ յորդորէ իր տղան որ հնազանդի իրեն և խօսք մտիկ ընէ։ Ասիկա անոր համար որ Հայկ Ինայէթեան երբեմն կերակուրներու մասին դժկամակութիւն ցոյց կուտար։ Վարժապետը «օրինակելի դաս մը տալու համար», հետեւեալ օրն իսկ արձակուրդի «Հայր Մեր»էն յետոյ «եղբայր Հայկը», — այն ատեններուն բացատրութեամբ — իր քովը կը կանչէ և անոր վիզէն կ՚անցնէ խոշոր գիրերով՝* «Քէնտի պապասընա, անասընա իթահաթ իտմէէն չօճուղուն հալի պու տըր» *գրուած խաւաքարտ մը, և կը տանի կը կեցնէ*

աղջիկներու վարժարանին դուռը, որպէսզի կարդան և թքնեն երեսին։ Տիար Հայկ Ինայէթեան խորապէս վիրաւորուած իր առնական արժանապատուութեան մէջ, այս ճիւաղային պատիժէն խուսափելու միայն մէկ ելք կը գտնէ. փախիլ և արդարև կը փախի բոկոտն և Կէրմիրէն կը վազէ մինչև Թալաս իր քրոջը տունը և այլեւս անգամ մըն ալ ոտք չի կոխեր Կէրմիրի Պարթեւեան վարժարանը։

Ահա դաստիարակութիւնը և իր արդիւնքը։

Սակայն հակառակ այս յետամնացութեան և նախնականութեան, իրողութիւն մըն է որ այդ ճալախայով, քաքով և չպուխով զինուած պատուելիները և Հայ մանկտւոյն սարսափները, իրենց այս անհարկու վարուելակերպով և իրենց այսօր ոչ-մանկավարժական նկատուած, խոտելի և թերեւս ծիծաղելի համարուած ուսուցման եղանակով, մեր երեւակայածէն շատ աւելի օգտակար եղած են, իրենց բոլորանուէր աշխատութեամբ և անձնուիրութեամբ և մանաւանդ իրենց տեւական պաշտօնավարութեամբ։

Այս կարգի հին աշխատաւորներէն շատերուն անունը երախտեօք կը յիշուէր մինչև վերջը Կեսարիոյ մէջ, որոնց ես ալ պիտի անդրադառնամ, իբր կրթական մշակներու, որոնք իրենց համեստ մաքի պաշարով ծառայած են սերունդներու, և գոնէ նախնական ծանօթութիւնները տուած են նորահասներու, «հաճաղայական ժամանակներու մէջ, ուր դասատուները ուրիշ բան չէին համարուիր եթէ ոչ իբր ցօցերու էն անիմաստ եւ էն նախատալից քմահաճոյքներուն առջեւ գլուխ ծռող ծառաներ, ամէն տեսակ նուաստացումներու» ենթակայ (Տ. Ե. Եղիազարեան, Արեւելեան Մամուլ, 1906, էջ 816)։

Այս համեստ աշխատաւորներէն մին Մկրտիչ Խալֆա Ուզուրլեան, ահա թէ ինչպէս կը նկարագրէ ամսական ուզելու «արարողութիւն»ը, այդ դժբախտ օրերուն։ «Ճգնաժամ մըն էր ան մեզի համար, գիտէ՛ք, ինչպէ՞ս դրամ ուզելու կ'երթայինք... Նախ օրեր առաջէն սկսելով մեր միտքը կը չարչրկէինք յառաջաբան մը պատրաստելու, լալկան եւ կարելի եղածին չափ սրտայոյզ. երբ անոնց խանութին կամ խորհրդարանին դուռը հասնէինք, կարելի եղածին չափ կը պզտիկնայինք, ուսերնիս կը կծկէինք, եւ մեր վերարկուն այնքան ուժգնապիրկ կերպով կը ծալլէինք մեր կուրծքին վրայ որ տակը հազիւ թէ կրնայինք շունչ առնել. իսկ երբ ներս մտնէինք ոլոռն ոլոռն քրտինք թափելով գլուխնիս աղերսանքի ամէնէն սրտառուչ արտայայտութեամբ մէկ կողմ կը ծռէինք, եւ մեր, մեր կնոջ, մեր զաւակներուն, նոյնիսկ մեր ազգականներուն երախտագիտութիւնը անոնց ոտքին տակ դնելով, կը թախանձէինք որ դրամ տան մեզ: Ափսո՛ս, այս ստորնացումին պատասխանը շատ անգամ սպառնալիք մը, անարգանք մը, կամ հայհոյանք մը կ'ըլլար միայն, այնպէս որ յաճախ տուն կը վերադառնայինք ոչ թէ միայն ձեռնունայն այլ նաեւ ճնշուած եւ նախատինքներով փետտուած վիճակի մը մէջ... Է՛հ, գիտէք, այն ատենի ցօցերուն ամէնէն մեծ հաճոյքն ու փառասիրութիւնն էր դասատուի մը... գալարումը կարելի եղածին չափ շատ անգամ վայելել» (Արեւելեան Մամուլ, 1906, էջ 817):

Այս տխուր պատկերը՝ որչափ որ ալ մասամբ երեւութապէս սրբագրուած, մեր կրթական գործին ամէնէն դժխեմ կողմն է վասնզի արհամարանքը հանդէպ ուսուցիչներու տակաւին մեր հոգաբարձուներու և թաղականներու ուղեղին մէջ կ'ապրի, և կը տեւէ։ Եւ այսօր ալ անձնական քմահաճոյքը նուազ դեր չէ որ կը կատարէ մեր դպրոցներուն մէջ, ուր եթէ ջոջեր չեն գործեր իրենց քմահաճոյքով, պզտիկ



իմաստակներ՝ որոնք շուկայի մէջ կանգուն դարձնել միայն սորված են կամ կուսակցութեան մը պիտակով ինքզինքնին զարդարած, կը գործեն ամէն նախճիր խնամիական հաշիւներով կամ կուսակցական շահախնդրութիւններով։ Ձեւն էր որ կը փոխուէր խորքը նոյնը մնալով։ Կեսարիոյ մէջ կրթական գործը այս խեղճ պատկերը կը ներկայացնէր մինչև 1880ական թուականները, երբ եթէ ոչ ինքն, Ազգային Սահմանադրութիւնը, գէթ անոր ազդեցութիւնը թափանցեց ներքին գաւառները։ Կեսարիա եւս ունեցաւ փրկարար ցնցում մը, և իր վարժարանները վերակազմեց արդիական ըմբռնումներով և Տէր Թոդիկեան դրութեամբ ուսուցման վերջ տուաւ։

Այս բարեփոխման մէջ մեծ դեր կատարած են Կ. Պոլիս հաստատուած Կեսարացիք, որ քիչ չէին թուով։ Անոնք թէև թրքախօս, ընդհանուր հոսանքին խառնուեցան և ինչպէս ուրիշ գաւառներէ Կ. Պոլիս գաղթողները՝ իրենց ծննդավայրին կրթական վերածնութեան համար կազմեցին դպրոցներու նպաստող ընկերութիւններ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, երբ ընկերութիւններու վրայ խօսուի։

Մասնաւորապէս Կեսարիոյ կրթական վերածնութեան գործին մէջ գերազանցապէս նշանաւոր դեր մը կատարած է ծնունդով Կեսարացի խիզախ ու յանդուգն, մաքառող ու պայքարող նկարագրով ռահվիրայ մը՝ Կարապետ Փանոսեան որ իր հայրենակիցներուն հասկցած լեզուովը՝ հայատառ թուրքերէն՝ նախ Միւնատիի Էրճիյաս (Արգէոսեան Մունետիկ) և ապա Մանզումէի Էֆքիար (Փունջ Կարծեաց) անուն լրագիրները հրատարակելով ընդհանուր Հայ ազգին՝ և մասնաւորապէս իր հայրենակիցներուն ականջին տակ հնչեցուց ահազանգը և հրաւիրեց զանոնք արթննալ, ուսման և կրթութեան կարեւորութիւն տալ։ Անիկա պայքարեցաւ նաև «մենծ աղայութեան» դէմ, որ իր մղձաւանջն էր կարծես, և անոնց հեղինակութիւնը՝ օրէնքի ու Սահմանադրութեան անունով փճացուց։ Ան իր հայրենակիցներուն վրայ իր ունեցած հմայքով ու հեղինակութեամբ Կեսարիոյ Հայոց համար կատարած է ցնցող դեր մը, և արթնցուցած է ջոջերու կամակատարութեանց միշտ համակերպող հասարակ ժողովուրդին մէջ, ազատ խօսելու, անկաշկանդ շարժելու բնական մտումը և մանաւանդ, գէթ ազգային մարզին մէջ, իր ունեցած ազատ իրաւունքներու գիտակցութիւնը։

Այս ցնցումին հետեւանքը հրաշալի եղաւ։ Քանի մը տարուան մէջ մոգական բարեփոխում մը մտաւ ազգային գործերու մէջ։ Հիմնայատակ եղան հին ծթռած դրութիւնները։ Մասնաւորապէս կրթական հարցը ստացաւ մեծ այժմէութիւն ու ծաւալ, որ աւելի քան անըսպասելի էր։

Ինչ որ առանձնապէս Կեսարիոյ վերածնութեան պատմութեան մէջ զարմանալի երեւոյթ մըն է, այն է որ նոր շարժումին առաջին գործօն ազդանշանը կը տրուէր ոչ թէ քաղաքէն այլ անկէ վեց փարսախ հեռու՝ Կէրմիր գիւղի ափ մը Հայոց կողմէ։

Այս երեւոյթը բոլորովին անմեկնելի չէ։ Կէրմիր այն շրջանին ամէնէն հարուստ, ամէնէն բարեկեցիկ և ամէնէն աւելի հեռաւոր վայրերու հետ յարաբերող և շփում ունեցող գիւղն էր։ Իր նիւթական բարեկեցիկութիւնը և իր հեռաւոր աշխարհներու հետ թէ իր շփումները, այս գիւղին բնակչութեան բացառիկ արթնութեան մը առիթը կ'ընծայէին։

Այս երկու պատճառներով Կէրմիրցիք շրջանին մէջ կրթական գործին առաւել չափով կարեւորութիւն տուին և իրենց վարժարանը լաւագոյն կրթական հաստատութիւնը եղաւ երկար ատեն, և ազգին տուաւ խումբ մը Կէրմիրցի և Թալասցի երիտասարդ ոյժեր որոնք Կեսարիոյ և շրջականներու կրթական գործը յեղաշրջեցին իսկապէս։

Սակայն կրթական իրական մեծ յեղաշրջումը բերաւ Կեսարիոյ վիճակին, Տրդատ եպ. Պալեանի հոյակապ դաստակերտը՝ Ս. Կարապետի վարժարանը, որ ո՛չ միայն ծառայած է Կեսարիոյ Հայութեան, այլ նաև բովանդակ Փոքր Ասիոյ Հայ բնակչութեան, տալով կանոնաւոր երկրորդական ուսում և իբր բարձագոյն կրթարան կատարելով նշանաւոր դեր մը ու ծառայութիւն մը որ մեր կրթական տարեգրութեանց մէջ պէտք է արձանագրուած ոսկի տառերով։ Անիկա ունեցաւ իր խորունկ ազդեցութիւնը գաւառին կրթական ու մտաւորական վերածնութեան գործին մէջ, մասնաւորապէս հասցնելով պատրաստուած ուսուցիչներ, որոնք նախնական Տէր Թոդիկեան դրութեամբ վարժարաններուն մէջ արդիական մեթոտներու կիրարկութիւնը ապահովեցին, նոյնիսկ գիւղական վարժարաններու մէկ կարեւոր մասին մէջ և հրաշալի փթթումի մը առիթ ընծայեցին։

## Զ.

## ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ

Ընդհանուր այս տեսութենէն յետոյ հարկ է ներկայացնել իւրաքանչիւր կրթական հաստատութեան հիմնադրութեան պարագաները, անոնց կեանքը և արդիւնքները, ինչպէս նաև կրթական գլխաւոր գործիչները, որոնք Կեսարիոյ կրթական և մտաւորական վերածնութեան գործին աշխատեցան։ Դժբախտաբար լիակատար տեղեկութիւններ չունիմ որպէսզի կարենամ կատարեալ շարայարութեամբ մը կրթարաններու և ուսուցիչներու կեանքը ներկայացնել լրիւ, սակայն պիտի չվարանիմ տալու ինչ որ կրցած եմ գտնել, իբր գրաւոր և բերանացի տեղեկութիւն, որքան որ ալ անոնք հեռու ըլլան ամբողջական պատկերացում մը տալէ։

1. ՀԱՅԿԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Այս դպրոցը Կեսարիոյ Ս. Աստուածածին եկեղեցիին հիւսիսային կողմը, իր կողքին հաստատուած էր, իր յարակից բաժանումներով։ Շէնքը ունէր երեք սրահներ և բաւականաչափ դասարաններ։ Նշանաւոր էր իր ուսումնարանին սրահը։ Ընդարձակ և բարձրացեղուն շինութիւն մը։

1895ի դէպքերէն առաջ անոր խորանաձև ճակատին երկու կողմերը կ՚երեւէին Հայկին և Արամին մեծադիր պատկերները՝ գունաներկ և խորանին կամարին մէջտեղը՝ հայկական զինանշանը և եզերքը՝ ոսկեզօծ վերտառութիւնը՝ «սկիզբն իմաստութեան երկիւղ տեառն է»։ Իսկ խորանին կիսաբոլորակը զարդարուած էր Ճանիկ Արամեանի «Հայկազն Մանկանց» անուն ընթերցարանէն ընդօրինակուած Անիի պատկերը։ Ուսումնարանին կից դասարաններուն վրայ բարձրացած էր Առաջնորդարանը, բոլորուած պաշտօնէութեան յատուկ գրասենեակներով։ Այս շէնքը անշուշտ սկզբնական շէնքը չէր։ Ապահովաբար, ինչպէս Ս. Աստուածածին եկեղեցին քանիցս վերաշինուած և նորոգուած էր, անոր յարակից այս դպրոցն ալ պէտք էր վերաշինուած կամ նորոգուած ըլլար։



Իմ կարծիքովս այս վարժարանը պէտք է ըլլայ Կեսարիոյ ամէնէն հին վարժարանը։ Շատ հաւանական է որ իր հիմնարկութիւնը կատարուած է ԺԸ. դարուն վերջերը կամ ամէնէն ուշ ԺԹ. դարուն սկիզբները, եթէ ոչ աւելի վաղ ժամանակներու մէջ Ս. Աստուածածնայ շրջափակին մէջ քահանաներ կամ լուսարարներ չեն գտնուած եկեղեցւոյ մանկանց գոնէ ընթերցանութիւն դասախօսող։ Իր նախնական շրջանին ապահովաբար ունէր այն պատկերը որ Եղիա Եղիազարեան գծած է այնքան կենդանի գիծերով բոլոր գաւառին դպրոցներուն համար։

1834ի վիճակագրութեան մէջ Կեսարիոյ քաղաքին երկու վարժարաններէն մին ապահովաբար այս դպրոցն էր, որուն մինչև 1860ական թուականներու կեանքին վրայ գրեթէ ամենադոյզն ծանօթութիւն մը իսկ չունինք։

1858 Սեպտ, 1ին կը կազմուի ընկերութիւն մը ի նպաստ Ս. Աստուածածին թաղին այս վարժարանին «Հայկազեան Ընկերութիւն Կեսարիոյ» անունով։ Այս ընկերութեան կազմակերպութեան մէջ մեծ դեր կատարած են Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեան և Աբրահամ վարժապետ կամ այն ատենի կոչումով «խալֆա»։

Այս ընկերութիւնը իր վարչութեան տակ կ՚առնէ վարժարանը (Միւնատի Էրճիաս, 1859, թիւ 14, էջ 110), երբ անոր գլուխը կը գտնուէր Կեսարիոյ գաւառին խիկարը նկատուած Կէօզլիւքլի Կարապետ վարժապետ (Նոյն, թ. 13, էջ 102)։ Այս թուականին յառաջդիմական խոշոր քայլ մը կ՚առնէ Կեսարիա առաջին անգամ աղջիկներու ալ վարժարան մը բանալով Ս. Աստուածածնայ շրջափակին մէջ (Նոյն)։ Այս կերպով Հայկազեան ընկերութիւնը կը կատարէ բարերար դեր մը։ Այս ընկերութեան գլխաւոր նպաստողները եղած են Կեսարիոյ ջոջերը։ Սակայն որովհետև 'այդ միջոցին սկսած էր և բուռն սաստկութեամբ կը շարունակուէր Ֆրէնկեան-Մանիկեան պայքարը, այս ընկերութիւնը շատ կարճ շրջան մը գործելէ յետոյ կը կազմալուծուի և 1859 Սեպ. 1ին կը վերակազմուի այս անգամ միայն երկու մաքառող հատուածներէն Կարապետ Ֆրէնկեանի կուսակիցներէն, որոնք իրենց ձեռքը ունէին Ս. Աստուածածին եկեղեցին։ Այս առթիւ կը բացուի հանգանակութիւն մը որուն գլխաւոր մասնակցողներն էին հետեւեալները.

| | | |
|---|---|---|
| Ֆրէնկեան Հաճի Կարապետ աղա . . | 3000 | ղրշ. |
| Մօստիչեան Հաճի Նշան . . . . . | 1800 | » |
| Թէքէեան Հաճի Մուրատ . . . . . | 1200 | » |
| Էվէրէկցի Գուզուեան Հաճի Յարութիւն | 1000 | » |
| Ալպօյաճեան Հաճի Կարապետ . . . | 900 | » |
| Տիւլկէր Փիլիպպոսեան Հաճի Սիմէոն . | 900 | » |
| Գազազեան Հաճի Նշան . . . . . . | 900 | » |
| Հաճի Յովհաննեան Հաճի Յովհաննէս . | 900 | » |
| Քիւրքճեան Հաճի Կարապետ . . . . | 900 | » |
| Կիրակոսեան Հաճի Դանիէլ . . . . | 900 | » |
| Մալխասեան Սարգիս . . . . . . | 900 | » |

Իսկ հարիւրաւորներ կան աւելի նուազ գումարներով, ինչպէս կը տեսնուի Միւնատի Էրճիասի (թ. 18 և յաջորդները) ցուցակներէն։

Այս ընկերութեան վարչութեան համար Ազգին կողմէ անդամ կարգուած էին (տես Մասիս, 1858, թ. 355)։

1. Սարգիս Մալխասեան
2. Դանիէլ Կիրակոսեան
3. Յակոբ Հաճի Յովհաննեան
4. Կարապետ Սաղըրեան
5. Բարսեղ Շահպազեան

Իսկ ընկերութեան Կ. Պոլսոյ գործակալներն էին

Մկրտիչ աղա Թաշճեան
Բարսեղ » Կիրակոսեան

Հաւանական է ենթադրել թէ այս ընկերութեան անունով է որ վարժարանը կոչուած է յետոյ Հայկեան Վարժարան։

1886ին վարժարանը ունէր 120 աշակերտ և հինգ պաշտօնեայ, ամսական 1300 ղրշ. ծախք (Վտարանդին, Մասիս, 1886, Հոկտ. 25, թ. 3845)։ Իսկ 1891ին 230 աշակերտ և վեց դասատու, ամսական ծախքն էր 1450 ղրշ. (Տրդատ եպ. Պալեան, Ծաղիկ, 1891, Յունիս 22, թ. 41)։ 1901ին նոյն վարժարանը վեցամեայ ընթացքով ունէր դարձեալ 230 աշակերտ և 8 ուսուցիչ, և ամսական 1600 ղրշ. ծախք, որուն 1200 ղրշ.ը թաղային սնտուկը կը վճարէր և 400ը թոշակներէ կը գոյանար (Վիճակացոյց Գաւառական Ազգ. Վարժարանաց Թուրքիոյ, 1901, Կ. Պոլիս, էջ 9)։ Վարժարանը իր բոլոր կեանքի տեւողութեան նախակրթարանի մը աստիճանը ունեցած է և հասուցած բազմաթիւ աշակերտներ։

Հայկեան վարժարանի տնօրէններուն և ուսուցիչներուն ամբողջական ցուցակը կազմել դժբախտաբար հնարաւոր չէ այսօր, վասնզի այդ հաստատութիւնը որ մէկ դարէ աւելի ժամանակամիջոց մը, այնքան յուզումներու և վէճերու մէջ ապրած է, զերծ չէ մնացած հասարակական վէճերու ազդեցութենէն։

Իր տնօրէններէն ծանօթ են պատահաբար

1858–59ին՝ Կէօզլիւքլի Կարապետ վարժապետ,
1875ին՝ Տ. Մարտիրոս քհ. Զարդարեան,
1885–86ին՝ Յարութիւն Նշանեան,
1886–1888ին՝ Դանիէլ Պօյաճեան (Միացեալ),
1889ին՝ Երուանդ Երկաթեան (Միացեալ),
1891ին՝ Դանիէլ Պօյաճեան (կրկին),
1892–1893ին՝ Մանուկ Ներհատեան Սեբաստացի,
1893–1901ին՝ Վահան Քիւրքճեան,
1907ին՝ Գարեգին Նահապետեան,
1910ին՝ Մինաս Մինասեան,

Իսկ ուսուցիչներէն կը յիշուին.

Յովհաննէս Թաշճեան Կէրմիրցի (1885 կառավարիչ և երաժշտապետ), Դանիէլ Պօյաճեան (1885–1886 և 1910–1915), Տ. Մարտիրոս քհ. Զարդարեան (1885), Առաքէլ Էֆքէրէցի (1885), Մերկերոս Ադամեան (1885), Պօղոս Գնդունի (1886), Յովհաննէս Պագըրճեան (1886), Մկրտիչ Կրճիկեան (1886), Կարապետ Թորոսեան (1886), Յակոբ Պուտագեան (1886, ֆրանսերէնի ուսուցիչ և կառավարիչ), Պետրոս և Մանուկ Նահապետեան, Յարութիւն Պօյաճեան (1889 ֆրանսերէն), Իսրայէլ Արսլանեան (1895–99), Յովհաննէս Տ. Եղիազարեան 1901), Գարեգին Նա-



հապետեան (1910), Արշամ (1910), Միսաք Թէնէքճեան (1910), Յովհաննէս Պօյաճեան (1910 կառավարիչ), Վահան Ամատունի, Կարապետ Դեղնածեան ևայլն։

2. ՀԱՅԿՈՒՀԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Ինչպէս վերը արդէն ըսի Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ կից 1858ին բացուած էր աղջիկներու դպրոց մը, որ իր տեսակին մէջ անդրանիկն էր բոլոր թեմին մէջ։ Այս վարժարանը հիմնուած էր Տ. Մարտիրոս Աքհ. Տ. Նիկողոսեանի ջանքերով, և հակառակ մաս կազմելուն Հայկեան վարժարանին որ այս հաստատութեան հիմնարկութեամբ երկսեռ վարժարանի կը վերածուէր, աղջիկներու կրթութիւնը այնքան արհամարուած էր, որ անոր ուսուցչութեան կը կոչուէին յաճախ հնօրեայ պատուելիներ, այսպէս մինչև 1895 այս վարժարանը յանձնուած էր Լաչինեան Հաճի Յակոբ պատուելիին ձեռքը և անկեալ վիճակ մը ունէր (Մանզումէ, թ. 1565)։

1886ին այս վարժարանը ունէր 170 աշակերտուհի և երկու վարժապետ, երկու վարժուհի և 700 ղրշ. ամսական ծախք (Վտարանդին, Մասիս, թ. 3845), իսկ 1891ին 300 աշակերտուհի, մէկ դասատու և մէկ վարժուհի և 600 ղրշ. ամսական ծախք (Տրդատ վրդ. Պալեան, Ծաղիկ 1891 Յունիս 22, թ. 41)։

1895ական թուականներէն յետոյ այս վարժարանը գոյութիւն ունենալէ դադրեցաւ է երբ Արամեան ընկերութեան մատակարարած աղջիկներու վարժարանը ազգային դարձաւ։

3. Ս. ՅԱԿՈԲԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Այս վարժարանը կը գտնուէր Ս. Սարգիս եկեղեցւոյն կից, իբր անոր թաղային վարժարանը։ Իր հիմնադրութեան թուականը ծանօթ չէ, սակայն ամէն պարագայի մէջ Ս. Աստուածածին եկեղեցւոյ կից դպրոցի մը կազմութենէն ժամանակով աւելի ուշ պէտք է հիմնուած ըլլայ և հաւանօրէն հետեւանք «մեծաւորներու» կռիւի մը կամ ջոջերու պայքարի մը, նման Ֆրէնկեան-Մանիկեան կուսակցութեանց կռիւին և գուցէ անոր իսկ ժամանակ, վասնզի հակառակութեան մը արդիւնք կրնար ըլլալ միայն 10 վայրկեան հեռաւորութեան մը վրայ երկրորդ վարժարանի մը հիմնարկութիւնը։ Համեմատաբար նուազ բարեկեցիկ թաղի մը մէջ հիմնուած այս վարժարանը դժբախտաբար միշտ աւելի տկար մնացած է իր դրացի վարժարանէն։

Թէ ինչո՞ւ Ս. Յակոբեան կոչուած է այս վարժարանը, չեմ գիտեր։ Անշուշտ ասոր համար պատճառ մը գոյութիւն պէտք է ունեցած ըլլայ։ Վերջին ժամանակներու մէջ փոխանակ Ս. Յակոբեանի պարզապէս Յակոբեան վարժարան կը կոչուէր։

Այս վարժարանը ունէր 1886ին՝ 130 աշակերտ, 4 պաշտօնեայ և ամսական 575 ղրշ. ծախք (Վտարանդին), 1891ին 170 աշակերտ, 5 դասատու և ամսական 1330 ղրշ. ծախք (Տրդ. վր. Պալեան, Ծաղիկ, նոյն), և վերջապէս 1901ին՝ 140 աշակերտ, 5 դասատու և ամսական 1000 ղր. ծախք, որուն 950 ղրշ.ը եկեղեցիին սնտուկը կը վճարէր և 50 ղրշ.ը թոշակներէ կը գոյանար (Վիճակացոյց Գաւ. Ազգ. վրժ.նաց, էջ 9)։

Յակոբեան վարժարանի տնօրէններէն մեզի ծանօթ են՝

.....— Խաչատուր Պաղտասարեան Կէրմիրցի (†1922),
1888.— Դանիէլ Պօյաճեան (Միացեալ),
1889.— Երուանդ Երկաթեան (Միացեալ),

1891-1892.—*Մանուկ Նորհատեան,*
1901-.....—*Վահան Ամատունի,*
1906-1908.—*Վահան Քիւրքճեան.*

*իսկ ուսուցիչներէն կը յիշենք մասնաւորապէս Մեսրոպ Թաշճեան Կէրմիրցին և Յարութիւն Պօյաճեան* (1889 *ֆրանսերէն*)։

*4. ՍԱՐԳԻՍ ԿԻՒՄՇԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ .— Այս վարժարանը կը գտնուի քաղաքին հարաւ-արեւմտեան կողմը նեղ և աղտոտ փողոցներով աղքատ թաղին Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ քակը և կը նկատուի նոյն թաղին ծխական վարժարանը, թէև դպրոցին շինութիւնը կը կանխէ եկեղեցիին կառուցումը, վասնզի 1826ին, Ս. Սարգիս եկեղեցիին կալուածներէն տան մը մէջ, ինչպէս ըսուեցաւ (էջ 890)* Գարա Մէրճան *անուն վարժապետի մը անունով* Գարա–Մէրճան մէքթէպի *կոչուած դպրոցը հիմնուած էր ինչպէս կը հաստատէր պղինձի վրայ յիշատակ մը ըստ Ե. Երկաթեանի* (Բիւզանդիոն, 1902 *Դեկտ.* 8, *թ.* 1878)։

*Այս վարժարանին տեղւոյն վրայ 1859ին կը կառուցուի Ս. Լուսաւորիչ եկեղեցին (տես էջ 890) և այս պատճառով Սարգիս Կիւմշեանի կազմակերպած փոքրիկ դպրոցը աստանդական կ'ըլլայ մինչև 1868, երբ Կիւմշեան Դանիէլ և Յովհաննէս ի յիշատակ իրենց հանգուցեալ հօր Սարգիսի՝ կը կառուցանեն իրենց ծախքով այս վարժարանը՝ որ Սարգիս Կիւմշեան անունով կը կոչուի։ Շէնքին ճակատը մարմարի վրայ կը կարդացուէր հետեւեալ յիշատակարանը.*

«Վարժարանս կառուցաւ ծախիւք Կեսարացի Դանիէլի եւ Յովհաննէսի։ Նուիրեալ ի նոցանէ ազգիս ի յիշատակ անուան հօր իւրեանց Սարգսի Կիւմշեան, 1868, Հոկտ. 1»։

*Կիւմշեանք այս նուիրատուութիւնը զուտ իրենց միջոցներովը կատարած ըլլալու համար ազգապատկան գետնին գինը — 100 լիրայի գումար մը*(1)*— վճարած են* (Բիւզանդիոն, *թ.* 1878)։

*Կիւմշեաններու շինած շէնքը միայարկ պարզ սրահ մըն էր 131 ք. մէթր և 630 խոր. մէթր տարածութեամբ, յեցած գմբեթարդ եկեղեցւոյ աջ կողմի պատին և իր մէջ առած էր եկեղեցւոյ այն մասը՝ ուր պիտի ըլլար Աւագանի պահարանը։ Այս շէնքը ունէր խոշոր պատուհաններ, պատին երկայնութեանը վրայ որ մօտաւորապէս 15 մէթր էր։ Լայնութիւնը երկուքի բաժնուած էր, մինչև կէսը խաչաձև եկեղեցւոյ աջ թեւն էր որ եկեր խրեր է դպրոցին կողը՝ ուր լայնքը մնացեր է հազիւ 4 մէթր։ Հոս եկեղեցւոյ պահարանը կը նայէր դպրոցին մէջ։ Միւս կէսը՝ դպրոցն էր որ գրաւեր էր եկեղեցւոյ կարեւոր մասը ։ Աւազանի պահարանը լայն էր հոս մինչև 8 մէթր։ Շէնքին բարձրութիւնը իր մեծութեան համաչափ էր և մէջտեղը քարէ միակտուր սիւն մը կար որ կարծես կը հեծէր իր վրայ դրուած այնչափ ծանրութեան տակ։ Ահա բուն Կիւմշեան վարժարանի շէնքը՝ որ վերջէն կը ծառայէր վարժարանին ծաղկոցի բաժնին։*

*Այս նախնական շէնքը յարաճուն աշակերտութեան նեղ գալով անոր վրայ աւելցած են մասեր։*

*Այսպէս* 1883*ին Մ. Սարգիս աղա Սելլեան շինել տուած է նոր ուսում-*

---

(1) *Այս գումարը ծախսուած է այն ատեն նորաշէն Ս. Լուսաւորիչ եկեղեցիին ծեփին։*





ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ, ՈՒՍՈՒՑՉՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՔ 1900 - 1901 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԿԻՒՄՇԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

1. (?), 2. *Մկրտիչ Ճամճեան,* 3. *Խաչատուր Տամլամաեան,* 4. *Միրիճան Բագլաեան,* 5. (?), 6. (?), 7. *Յակոբ Պօհճէլեան,* 8. *Յարութիւն Զոլաքեան,* 9. *Արամ Պատանեան,* 10. (?), 11. *Կարապետ Ժամկոչեան,* 12. *Աւետիս Մէրտինեան,* 13. *Կարապետ Էլիպէօյիւքեան,* 14. *Պետրոս Տիւսիզեան,* 15. *Դանիէլ Պօյաճեան,* 16. *Պետրոս Սէֆէրեան,* 17. *Հայկազուն Թաշճեան,* 18. *Զաքէոս Սահակեան,* 19. *Մկրտիչ Գալֆա,* 20. *Երուանդ Երկաթեան,* 21. *Յակոբ Իզմիրլեան,* 22. *Գէորգ Ճամճեան,* 23. *Վահան Ճամճեան,* 24. *Հաճի Թադէոս Մնտիկեան,* 25. *Հաճի Գրիգոր Մէլէմէթճեան,* 26. *Բարսեղ Քիլիմլեան,* 27. *Հաճի Վարդան Շալճեան։*

նարան մը և Առաջնորդարան մը, իսկ երկուքին մէջտեղը կամարաշէն գաւիթ մը և թաղականութեան յատուկ սենեակ մը, ինչպէս նաև մէկ մէկ սենեակ քահանայից և ժամկոչներու համար, որոնք նոյնպէս յետոյ կը գործածուէին դպրոցի (Պետրոս Մարթաեանի տեղեկութիւն և Բիւզանդիոն, թ. 997)։

1889ին հիմնուած է ուրիշ ուսումնարան մը եւս աւելի ընդարձակ որ շինած է ի կենդանութեան Տիկ. Աննա Գ. Մնտիկեան (Արեւելք, 3524 և Բիւզանդիոն, թ. 997)։ Այս շէնքն ալ ընդարձակ լուսաւոր սրահ մըն էր, 25 կանգուն երկայնութեամբ և 10ական մէթր լայնութեամբ և բարձրութեամբ։

1890ին Թաղ. Խորհուրդը գնած է քանի մը տուներ եկեղեցւոյ կից և ի հիմանէ կառուցած Մայր եկեղեցւոյ վարժարանին յատակագիծին վրայ ուրիշ շէնք մը նոր նախակրթարանի կարգերու սահմանուած (Արեւելք, 3523)։ Այս շէնքին դռնէն ներս երկուստեք կան դասարաններ մէկ մէկ հատ և երկուքին ալ ներսի ճակատը շինուած է ապակեփեղկով թանգարան-մատենադարան։ Այս թանգարան-մատենադարանները որ կը ծառայէին նաև դասարաններու բաւական լուսաւոր էին, ունենալով երեքական պատուհաններ, եկեղեցւոյ բակին վրայ նայող և ուրիշ երեքական պատուհան ներսը մեծ սրահին հետ։ Այս երկու դասարանները և իրենց միջոցը որ մուտքն էր վարժարանին և որուն պատերուն վրայ գամուած էին տախտակէ աստիճաններ, ուր տղաք կը շարէին իրենց մուճակները կամ սանտալները՝ շէնքին յառաջակողմը բռնած էին։ Դիմացը՝ մուտքէն և երկու դասարաններէն ներսն է որ շինուած էր սերտարանը երկու կողմին վրայ գրասեղաններով բաժնուած, բաւական բարձր, և լուսաւորուած սերտարաններու վեց պատուհաններէն և ասոնց տանիքէն վեր բարձրացած պատուհաններէն։ Շէնքին երկայնութիւնն էր 25 և լայնութիւնը 10 կանգուն։

1899ին Թաղ. Խորհուրդը բակին վրայ նայող տուն մը գնեց և անոր տեղը ի հիմանէ կառոյց 1 սրահ և 2 դասարան եւս, 50 քռ. մէթր տարածութեան մը վրայ։ Այս շէնքը յատկացուած էր իբր լրացուցիչ ծաղկոցի։ Շինուած է ի յիշատակ Թիմուրեան և Շալճեան ընտանիքներուն, որոնք եկեղեցիին նուիրած էին տուն մը և երկու խանութներ (Բիւզանդիոն, թ. 997)։

Ս. Լուսաւորիչ եկեղեցին այսպէս հիւսիսէն և հարաւէն շրջապատուած էր դպրոցական շէնքերով, որոնք իրեն հետ միատեղ տարածուած էին 2207 քռ. մէթրի վրայ, հետեւեալ կերպով ստորաբաժնուած։

| | | |
|---|---|---|
| Եկեղեցի . . . . . . . | 515 | քառ. մէթր |
| Շրջափակը՝ խաղավայր. . | 1133 | » » |
| 4 սրահներն երկուստեք . | 381 | » » |
| 8 դասարան և այլ . . . | 178 | » » |

Այսպէս վերջերը Կիւմշեան վարժարանը «կը բաղկանար 10ի չափ մեծ ու փոքր քարաշէն սրահներէ, որոնք կը շրջապատէին Ս. Լուսաւորիչ հոյակապ եկեղեցին աջ ու ձախ կողմերէն. մէջտեղը նեղ ու երկար սալայատակ բակերով: Սրահներուն դուռները եւ պատուհանները կը բացուէին այս նեղ բակերուն վրայ, որոնք կը ծառայէին իբրեւ անցք աշակերտներուն՝ դասարան մտնելու եւ ժողովրդեան՝ եկեղեցի յաճախելու: Սրահները միայն մէկ կողմի վրայ պատուհան եւ դուռ ունենալով, անոնց հովահարումը (aeration) շատ դժուար տեղի կ'ունենար եւ խճողուած սրահներուն մէջ, մանաւանդ ամառուան տաք օրերուն, հեղձուցիչ մթնոլորտ մը կը տիրէր եւ տղաքը գրեթէ թմրած այդ անտանելի օդէն, աշխատելու անկարող կը դառնային: Սրահները անբաւական էին թաղին յարաճուն աշակերտութեան համար եւ հարկադրաբար գրաւուած էին նաեւ Առաջնորդարանի եւ քահանայից երկու սենեակներն ալ եւ կը ծառայէին դասարանի: Աշնան ու գարնան, օդին թոյլատու ամիսներուն, եկեղեցւոյ պահարանն ալ կը գործածուէր իբրեւ դասարան» (Դաբբիէլ Թագւորեանի ձեռագիր)։

Կիւմշեան վարժարանը՝ ուր յաճախող տղաքը առհասարակ աղքատ դասակարգին կը պատկանէին ժողովուրդը կը կոչէր Նալինի մէքթէպ, վասնզի աղքատ ու արհեստաւոր դասակարգի զաւակները դպրոց կ'երթային փայտեղէն նալիներով։

Տակաւին 1900ական թուականներու սկիզբը այդ վարժարանին բոլոր դասարանները զուրկ էին գրասեղաններէ և տղաք կը նստէին խոշոր տախտակներու վրայ Ազամական դրութեամբ ծալլապատիկ (Բիւզանդիոն, թ. 997)։ 1895ին այս վարժարանը նկարագրող թղթակից մը կ'ըսէ թէ «հոն կը տեսնէք ծունկ ծունկի նստած տղաքներ որոնք ձմեռուան ցուրտէն ապաւինելու միջոց չունին. ամէնէն մեծը 12 տարեկան: Ոմանց առջեւ տախտակ մը երկնցած, երկու կողմը ոտքեր գամուած, դժուար չէ հասկնալ, աս կը ծառայէ իրենց գրասեղանի: Աղքա՜տ, շա՜տ աղքատ տղաքներ. հազիւ կրցած են պարտկել իրենց մարմինը ցնցոտի էնթարիի փէշերուն մէջ. քուրջէ շինուած մինտէրին վրայ՝ զոմի մը յաւէտ քան դպրոցի նմանող այդ տեսակ շէնքին մէջ՝ որ իրենց համար շատ նեղ է: Ի տես այդ 270 պզտիկներու հէգ վիճակին՝ որոնք կու գան թշուառութիւնը բուն դրած տուներէ՝ այսպէս բզքտուած լաթերով մերկ գրեթէ եւ բոպիկ ոտքով՝ անկարելի է չկարեկցիլ այդ թշուառ էակներուն որ բարեբախտաբար անգիտակ են իրենց վիճակին: Ամէն մէկ տղայի շարժումին՝ փոշիի ամպեր կը կազմուին վարժարանի մթնոլորտին մէջ, կը շնչուին ու կուլ կը տրուին: Մաքրութիւնը այդ դռնէն ներս մտնելու պիտի չիշխէ, այնպէս պիտի համոզուէին հոն այցելողները» (Արեւելք, 1895. Նոյ. 9, թ. 3523)։

Այս աղքատ թաղին վարժարանը՝ ուր մինչև 1880ական թուականը կատարելապէս Տէր Թոդիկեան դրութեամբ կրթուած են սերունդներ, յետոյ Կեսարիոյ լուսագոյն վարժարանը հանդիսացած է։ Հոն երկար տարիներ, այսինքն եկեղեցւոյ շինութեան թուականէն՝ 1859էն մինչև 1901, պաշտօնավարած է սարկաւագ և լուսարար Մկրտիչ Խալֆա Ուզուրլեան որ երբեմն այս վարժարանին մէջ ամենայն ինչ էր և յետոյ միայն փոքր ծաղկոցի տղոց պարզ ընթերցում սորվեցնող։

Կիւմշեան վարժարանի մէջ առաջին անգամ քիչ շատ արդիական ոգի ներմուծող դէմքը եղած է Դանիէլ Սարաֆեան, երբ արդէն Կեսարիոյ միւս վարժարաններուն մէջ քիչ շատ բարեփոխումներ ներմուծուած էին, հին խալֆա կոչուած փաթթոցաւոր տիրացուներու տեղ նոր վարժապետներ և Սաղմոսի, Ժամագիրքի և Նարեկի տեղ նոր դասագիրքեր՝ քրիստոնէական, ընթերցարան, պատմութիւն և երբեմն քերականութիւն աւանդել սկսած էին։

Պ. Պետրոս Մարթաեան, աշակերտ Կիւմշեան վարժարանի, դըպրոցին արդիականացման շրջանին, այս բարեփոխումը կը նկարագրէ հետեւեալ կերպով։

«1880ին կամ 1881ին, աշնան առաւօտ մը ամբողջ թաղականները եւ հոգաբարձուները ներկայացան, իրենց հետ ունենալով անծանօթ երիտասարդ մը սեւ մօրուքով, գրավաթով եւ սէթրի բանթալոնով: Աշակերտներէն ոմանք

իրաւու կը փափայինք թէ Պոլսէն եկած նոր վարժապետը ան է: Քիչ վերջը անոնք մեկնեցան բայց նոր վարժապետը երկու օր լուռ եւ անգործ եւ մտածկոտ ժամանակ կ'անցնէր եւ մենք կը զարմանայինք թէ այս ի՞նչպէս վարժապետ է:

Այս երկու օրուան միջոցին մեր նախկին կառավարիչը Կարապետէֆ. Լիւլէճեան, կարծես նոր վարժապետին համակրանքը շահելու համար աւելի խստութիւններ բանեցնել սկսաւ: Մենք արդէն վարժուած էինք հանապազօրեայ յանկերգին: Երբ բազուկները սոթտելով ու հաստ ու անճոռնի ձայնովը պոռալով կրկնելու կ'սկսէր սա խօսքերը. **«Օրհնեալ է փայտ որով լինի արդարութիւն»**, գիտէինք թէ կամ ընդհանուր (որուն կ'ըսէն *սըրա տէյնէյի*) եւ կամ մասնաւոր ծեծ կայ: Մասնաւորները արդէն միշտ անպակաս կ'ըլլային: Անոնք վերակացուին կողմէ մասնանշուած՝ չոր տախտակամածին վրայ ժամերով ծնրաչոք կ'սպասէին մինչեւ որ կառավարիչը ժամանակ ունենար ծեծելու:

Նոր վարժապետին պաշտօնավարութեան ձեռնարկելու երրորդ օրը օրհնեալ օր մը եղաւ մեզ՝ աշակերտներուս համար, որովհետեւ այլեւս չլսեցինք ոչ օրհնեալ փայտը եւ ոչ ալ *սըրա տէյնէյի* կոչուած անարդար եւ վայրենի սովորութիւնը: Ֆալախանի դրութիւնը քանի մը տարի առաջ վերցուած էր երբ Ասղմոսի տեղ ընթերցուած մտած էր վարժարան: Այս անգամ երբ զաւազանն ալ վերցուեցաւ մենք ալ կը զարմանայինք թէ առանց զաւազանի միթէ կարելի՞ է աշակերտութիւնը զսպել: Նոր վարժապետը, Դանիէլ Սարաֆեան իրիկուան արձակուրդէն քիչ մը առաջ համառօտ ճառախօսութեամբ մը յայտարարեց իր պաշտօնակիցներուն թէ «այսօրուընէ սկսեալ արգիլուած է զաւազանի դրութիւնը. վարժապետի մը համար առաջին պարտականութիւնն է աշակերտութեան սէրը եւ յարգանքը շահիլ, ինչ որ բնականաբար կարելի չէ զաւազանով»: Իսկ աշակերտներն ալ հրահանգեց ըսելով. «վաղուընէ սկսեալ եղունգնին կտրուած, մազերնին սանտրուած, ձեռքերնին ոտքերնին մաքուր եւ կարգապահութեամբ ներկայ պիտի ըլլաք ժամանակին: Դուք հոս կուգաք ոչ թէ ծեծ ուտելու այլ բան մը սորվելու համար. ջանացէք յառաջդիմութեան»: Հետեւեալ օրուընէ իսկապէս կարծես այլակերպութեան հրաշք մը կատարուածի պէս ամէնքս ալ փոխուած նոր վարժապետին հանդէպ մասնաւոր սէր եւ յարգանք մը տածել սկսանք»:

*Թաղականները՝ չնչին վարձքով մը զինքը վարժապետ կարգած ատեննին իրմէ պահանջեր էին թուաբանութեան չորս գործողութիւնները կատարելու և Աւետարանը թարգմանելու չափ հայերէն սորվեցնել թաղինտղոց, ասիկա բաւհամարելով: Դանիէլ Սարաֆեան պատասխաներ է թէ ամսականի խնդիրը երկրորդական է, ինք դրամի սիրոյն համար չէ որ հոս եկած է վարժապետութիւն ընելու, այլ իր բուն նպատակն է հայրենիքին ծառայել, ուստի խնդրած է որ զինքն չկաշկանդեն և ձեռքերը ազատ թողուն: Այս պարագային խոստացած է Կիւմշեան վարժարանը Կեսարիոյ առաջնակարգ դպրոցն ընել: Արդարև երկու տարուան մէջ շահած է մեծ համբաւ և վարժարանին վարկը բարձրացուցած է:*

*Այս վարժարանը որ մինչև այն ատեն հազիւ* 300 *աշակերտ և* 100-120 *ոսկի պիւտճէ ունէր,* 2-3 *տարի վերջը* 650-700 *աշակերտ և* 300-400 *ոսկի ծախք ունէր:* «Եւ զարմանալին այն է որ նոյն ազգը, նոյն ժողովուրդը որ մեծ դժուարութեամբ 100-120 ոսկի ծախքը կը հայթայթէր 2-3 տարի վերջը 400 ոսկին մեծ դիւրութեամբ վճարելէ յետոյ, դրամ ալ կ'աւելցնէր եւ շրջակայ տուներ գնելով նոր նոր դպրոցական շէնքեր կ'աւելցնէր» (*Մարթաեան*),

*Դանիէլ Սարաֆեան* 1885*ին կը հիմնէ Սանուց ընկերութիւն մը,*






**ԿԻՒՄՇԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՔԸ (1913)**

**1. ԶԱՔԷՈՍ ՍԱՀԱԿԵԱՆ, 2. ՏԻԳՐԱՆ ԱՌԱՔԷԼԵԱՆ, 3. ՀԱՃԻ ԿԱՐԱՊԵՏ ՉԱԽՃԵԱՆ, 4. ՀԱՃԻ ԿԱՐԱՊԵՏ ՄԱԹՈՍԵԱՆ, 5. ՏՈՔԹ. ԼԵՒՈՆ ՓԱՆՈՍԵԱՆ, 6. ԳՐԻԳՈՐ ՂՐՈՒՇՃԵԱՆ, 7. ՅԱԿՈԲ ԷՎԷՐԷԿԼԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ), 8. ՄԻՆԱՍ ՄԻՆԱՍԵԱՆ (ՏՆՕՐԷՆ), 9. ՊԵՏՐՈՍ ԷԹՄԷՔՃԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ), 10. Ն. ՊԱՌՄԱՃԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ), 11. Յ. ՔԷՉԷՃԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ), 12. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՕՅԱՃԵԱՆ (ԵՐԱԺԻՇՏ), 13. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՉՈԼԱՔԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ), 14. ՅԱԿՈԲ ՉԱՏՐՃԵԱՆ (ՈՒՍՈՒՑԻՉ):**

որուն բաժանորդ աշակերտք հինգ փարա շաբաթականով կը հայթայթէին ո՛չ միայն վարժարանին պէտք եղած դասագիրքերը աժան գնով և աղքատներուն ձրիաբար՝ այլ նաև կը ծախէին Կեսարիոյ և մօտակայ քաղաքներու վարժարաններու համար դասագիրքեր գոհացուցիչ գնով։ Այս միջոցով վարժարանը կրցած էր ունենալ բաւական ճոխ մատենադարան մը, բնագիտական գործիքներ և իրեն պէտք եղած բոլոր դասագիրքերը՝ զորս ձեռք բերելու դժուարութիւնն ունէին ուրիշ կեդրոնէն հեռու վարժարաններ (Արեւելք, թ. 3523)։

Դանիէլ Սարաֆեանի հրաժարումէն յետոյ ալ Կիւմշեան վարժարանը միշտ պահեց իր շահած դիրքը, և տուաւ լաւագոյն արդիւնքը։

Դանիէլ և Յովհաննէս Կիւմշեան եղբարք իրենց հօրը յիշատակին այս վարժարանը կառուցանելէ յետոյ ազգին կը նուիրեն, Կէօն խանին մէջ սենեակ մը և երկու խանութ, Վէզիր խանի մէջ թիւ 21 և 22 երկու սենեակներ, Ուզուն Չարշը և Պէզէսթէն Գաբու մէկ մէկ քարուկիր խանութ և 35 հատ 1863ի Օսմ. փոխառութեան պարտաթուղթ, որոնց հասոյթը պիտի յատկացուէր Պէզիր Խանէի մէջ և Ղարիպլէր գերեզմանատան եզերքը իրենց հօրը շինած երկու աղբիւրներուն նորոգութեան և գերեզմանատան մօտ տնկուած 400 ուռենիներու պահպանութեան, ինչպէս նաև Հաճըլլարի ճամբուն վրայ գտնուած ձիւնի հօրը լեցնելու, իսկ մնացածը վարժարանին (Մանզումէ, 1873 Յնվ. 10-23, թ. 2080)։

Սակայն այս նուիրատուութիւնը՝ որուն ամէնէն գլխաւոր մասը Օսմ. Քօնսոլիտները կը կազմէին, 1877–78ին գրեթէ բոլորովին փճացած է, Թուրքիոյ սնանկութեան հետեւանօք։

Կիւմշեան եղբարք 1892ին Վաքֆի դրութեամբ կտակ մը եւս ըրած էին որուն գումարը 1000 ոսկիի հասած էր 1902ին և նուիրած են 5–600 ոսկի արժէքով կալուած մը Կեսարիոյ մէջ, սակայն այնպիսի ձեւով մը եղած էր այս կտակը և նուիրատուութիւնը, որ վարժարանը չի կրցաւ անոնցմէ անմիջականօրէն օգտուիլ։

Այս կտակով պայման դրուած էր կալուածներուն հասոյթէն իրենց հաստատած երկու մշտահոս աղբիւրները և գերեզմաննոցի ուռիները միշտ պահելու բաւարար գումար մը ամէն տարի ծախսելէն յետոյ յաւելեալ գումարը բարդել դրամագլուխին վրայ, մինչև որ անիկա հասնէր այնպիսի քանակութեան մը որ իր հասոյթը բաւական ըլլար նախակրթարանի մը ծախքը հոգալու։

Յովհաննէս Կիւմշեանի մահուան ատեն բոլորովին անջատ այս կտակէն երեւան եկաւ նոր կտակ մը որով Կեսարացի այս վաճառականը կը թողուր ազգին 10000 լիրա, որուն արտադրած տարեկան շահուն 40 առ 100ը իր հիմնած վարժարանին պիտի յատկացուէր։

Կիւմշեան վարժարանին տարեկան 50 ոսկիով կը նպաստէին նաև երկար տարիներ, Մելքոնեան եղբարք Գահիրէէն։

Կիւմշեան վարժարանը 1868էն մինչև 1878 մատակարարուած է Ս. Սարգիս եկեղեցիի թաղականութեան կողմէ, վասնզի Ս. Սարգիսցիք էին որ առաջին անգամ Տրեա–Շարի վրայ ուշադրութիւն դարձուցած, հոն նախ դպրոցի պէս բան մը հիմնած և ապա Ս. Լուսաւորիչ եկեղեցիին շինութեան նպաստած էին։

Այս պատճառով իրենց կողմէ կարգած են փոխ–թաղականներ։

1878ին Ս. Լուսաւորիչ եկեղեցին առանձին թաղ կը կազմէ և



կ'ունենայ իր Թաղ. Խորհուրդը, որ կը մատակարարէ վարժարանը մինչև 1883։ Բայց այս ժամանակամիջոցին ալ ներքին խնդիրներ արգելք կ'ըլլան անոր զարգացումին, հետեւաբար 1883էն է որ կ'սկսի եկեղեցւոյ բարեզարդութիւնը և իր դպրոցին առաջին փայլը։

Այս միջոցին է որ նաև կը հիմնուին այն շէնքերը որոնք կը շրջապատէին եկեղեցին։

1890էն յետոյ Կիւմշեան վարժարանը կը կառավարուի Թաղ. Խորհուրդէն անկախ Հոգաբարձութեան մը ձեռքով։

Թաղեցիք Հոգաբարձութեան յանձնած էին հանդերձագինի և ձիթագինի տուրքերը, վարժարանի անունով նուէրները և աշակերտներու թոշակները։

Այսպէս Կիւմշեան վարժարանը լաւագոյն ձեռքերու մէջ եղած է։

1885էն մինչև 1900 վարժարանին հոգաբարձութեան անդամակցած են երկար տարիներով՝

Թադէոս Մնտիկեան,
Ղազար Տամլամաեան,
Բարսեղ Քէլէկեան,
Գրիգոր Քէփէնէկեան,
Վահան Ճամճեան,
Վարդան Շալճեան.

իսկ կարճ պաշտօնավարութիւններ ունեցած են՝

Յակոբ Զամուրեան,
Գրիգոր Սերովբեան,
Դանիէլ Սարաֆեան,
Տիգրան Մորուքեան,
Դանիէլ Բէմպէճեան.

1907ին Կիւմշեանի Հոգաբարձուներն էին Պատրիարքարանէն ընտրուած

Թադէոս Մնտիկեան,
Դանիէլ Սարաֆեան,
Վահան Ճամճեան.

1826էն՝ այսինքն Գարա–Մէրճան վարժապետի օրէն մինչև 1900–1901 հոն պաշտօնավարած էին 61 պաշտօնեաներ։

1896 Մարտ 27էն մինչև 1900 Օգոստ.ի վերջ (5 ուկէս տարուան մէջ) վարժարանի տոմարն արձանագրուած աշակերտներն էին 1393։

Զհաշուելով թերաւարտ աշակերտները, մինչև 1900 վարժարանը շրջանաւարտ տուած է 77 ուսանողներ, որոնք լաւ համբաւ շահած են (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, թ. 1879)։

Այս վարժարանը, ինչպէս տեսնուեցաւ, չափազանց խեղճ սկըզբնաւորութիւն մը ունեցած էր։ Իր աշակերտները ի չգոյէ թուղթի կամ քարետախտակի, թիթեղի և թիկնոսկրի վրայ կը գրէին։

1861էն 1878 ամսական ծախքը 400 դրուշէն աւելի չէր և դարձեալ թշուառութիւնը կը տիրապետէր շէնքէն ներս։ Աշակերտները ձմրան մէջ խեցիի վրայ կրակ կը բերէին իրենց տուներէն, որովհետեւ պատուհանները ապակի ունենալէ հեռու, թղթուած իսկ չէին, ու կրակարաններուն մէջ կը ծխային թրի՛ք (Նոյն, Բիւզանդիոն, 1879)։

1886ին՝ ունէր 95 աշակերտ միայն և 5 դասատու և ամսական 615 ղրշ. ծախք (Մասիս, թ. 3845)։

1891ին՝ 450 աշակերտ և 8 դասատու և 2000 ղրշ. ամսական ծախք (Ծաղիկ, 1891, թ. 41)։

1901ին՝ 680 աշակերտ, և 14 ուսուցիչ և 2650 ղրշ. ամսական ծախք, որուն 1650 ղրշ.ը թաղային սնտուկէն, 1000 ղրշ.ը թոշակներէ (Վիճակացոյց, եւայլն)։

*Այդ թուականին կը բաժնուէին՝*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Ծաղկոցը* | 6 | *կարգ* | 258 | *աշակերտով* |
| *Նախապատրաստական* | 4 | » | 133 | » |
| *Նախակրթարան* | 6 | » | 176 | » |
| *Բարձր* » | 6 | » | 121 | » |
| | 22 | » | 688 | |

*Տարեշրջանն էր* 10 (Բիւզանդիոն, *թ.* 1879), *իսկ տարեկան ծախքը ըստ Երեւաթեանի (Նոյն) սա պէս կը բաժնուէր նոյն թուականին.*

| | |
|---|---|
| *Աշակերտաց թոշակներէն* . . . . . . . . . . . . . . . . . . . . . | 14000 |
| *Նուէր Մելքոնեանէ* . . . . . . . . . . . . . . . . . . . . . . | 5000 |
| *Զատկի – Ծնունդի ձիթագին* . . . . . . . . . . . . . . . . . | 6000 |
| *Հանդերձագին* . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . | 4000 |
| *Փնակ և այլ նուէր* . . . . . . . . . . . . . . . . . . . . . | 4500 |
| | 33500 |

*Աշակերտներէ գանձուած առաւելագոյն թոշակը ամսական* 13 *ղրշ. նուազագոյնը* 1 *ղրշ. էր։ Ձրի աշակերտներուն թիւը* 250 *էր։*

*Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն* (1908) *յետոյ երբ կեսարացիք նոր թափով մը ասպարէզ նետուեցան և զարկ տուին իրենց դպրոցներուն, Կիւմիւշեան վարժարանը ստացաւ նոր փայլ մը։ Վարժարանին այն ատենուան* (1908–1911) *տնօրէնը՝ Պր. Գաբրիէլ Թագւորեան, որ իր յիշողութիւնները գրի առած է, այդ շրջանին կեանքը կը պատկերացնէ շատ խղճամիտ կերպով։ Ան կ'ըսէ թէ* «Լուսաւորիչ թաղը, Կեսարիոյ ամէնէն բազմամարդ մասն էր: Հակառակ որ հինգ տարեկանէն վեր մանչերը միայն կ'ընդունէին Ծաղկոց–Մանկապարտէզը առանձին հաստատութիւն մըն էր քաղաքին մէջ, աղջկանց վարժարանին կից—, աշակերտութեան թիւը կը հասնէր 750ի (5–6 տարեկան) եւ դեռ բազմաթիւ փոքրիկներ կը մնային տունը տեղի անբաւականութեան հետեւանքով: ... Ընդհանրապէս միջին եւ աղքատիկ ընտանիքներու վարժարանը կը համարուէր Կիւմիւշեանը եւ բարեկեցիկ դասի տղաքը բացառութիւն կը կազմէին աշակերտութեան մէջ: Առհասարակ ընդունակ եւ աշխատասէր էին այս թաղին տղաքը եւ մասնաւոր հակամիտութիւն ունէին դպրոցական յարատեւ աշխատանքներու: Կարգափոխութեան ընթացքին 6–8 o/o տոկոսը միայն անկարող կ'ըլլար նոր դասարան բարձրանալու: Վարժարան յաճախելու մէջ աշակերտութիւնը փոքրէն մինչեւ մեծ՝ զարմանալի յարատեւութիւն մը երեւան կը բերէր եւ բացակայութիւնը շատ հազուադէպ էր դպրոցական շրջանին մէջ, բացի անշուշտ հիւանդութեան պարագայէն: Այս կէտը, առաջին օրէն ուշադրութիւնս գրաւած էր, երբ կը մտածէի գաւառական այլ շրջաններու վրայ, ուր տղաքը, վարժուած դաշտ ու լեռ արձակ համարձակ ման գալու, կը դժկամակէին դպրոցին մէջ ժամերով բանտարկուելու եւ կը փախչէին դէպի այգիներն ու պարտէզները: Մայրերը հոն առաւօտուն



բռնի վարժարան կը բերէին իրենց անսանձ զաւակները եւ կը յանձնէին ուսուցիչին, խնդրելով որ նոզածու ըլլան անոնց մասին եւ թոյլ չտան որ որոշեալ ժամանակէն առաջ անոնք կծիկը դնեն դպրոցէն:

Առաւօտուն Կիւմիւշեանի մէջ, աշակերտութեան դպրոց մուտքէն վերջ. դռները կը գոցուէին մինչեւ երեկոյ եւ ոչ ոքի թոյլատրուած էր փողոց ելլել, բացի ստիպողական պարագաներէ: Տղաքը կէսօրին կը ճաշէին եկեղեցւոյ բակը՝ նըստած սալերուն վրայ, եւ կը խաղային միեւնոյն տեղը: Ընդհանրապէս չոր ուտելիքներ — մանաւանդ ապուխտ, երշիկ եւ պաստեղ— կը կազմէին տղոց համեստ ճաշը, թէեւ քանակով քիչ, բայց սննդարար: Շնորհիւ Կեսարիոյ առողջարար ջուրին, այդ չորեղէն սննդառութիւնը բաւարար կը հանդիսանար տղոց աճումին եւ աշխատանքին: ... Դաստիարակները կը մտահոգուէին միայն վարժարանի շրջափակին մէջ գործուած յանցանքներով, իսկ արտադպրոցական կեանքի մասին գրեթէ զանգատ չէր լսուեր: Դպրոցական ժամերէ դուրս տղաքը փողոցին կամ դաշտերու մէջ վազելու, խաղալու դիւրութիւնը չունէին: Իրենց պարապոյ ժամերուն եւ օրերուն շուկայ կ'երթային իրենց հօրը աշխատակից ըլլալու՝ իրենց կարողութեան չափով: Կիրակի օրերուն, տղաքը տանիքները կը բարձրանային իրենց ընկերակիցներուն հետ խաղալու համար: Կեսարացիի կեանքին մէջ տանիքը առանձնայատուկ դեր ունէր: Այլուր դաշտը կամ պարտէզը, Կեսարիոյ մէջ տանիքը մեծ ծառայութիւն կը մատուցանէր իբր զբօսատեղի: Տղաքներու ժամադրավայր էին տանիքները, որոնք իրարու կից ըլլալով յաճախ, հեռաւոր վայրերէ անգամ փափաքողներ կրնային հաւաքուիլ միեւնոյն տեղը եւ խաղալ խըմբակներով: Այս հանգամանքը Թուրք եւ Հայ տղոց բախումներու կէտերը զգալապէս կը նուազեցնէր եւ որուն հետեւանքով այդ օրինակ զանգատներ չէին լըսուիր վարժարանէն ներս, ինչպէս կը պատահէր առհասարակ ուրիշ Հայ եւ Թուրք խառն բնակչութիւն ունեցող վայրերու մէջ:

Վարժարանը ունէր հետեւեալ ուսմ. բաժանումը: Ծաղկոց (երեք տարի). Նախակրթարանի վեց դասարաններ եւ լրացուցիչ երկու տարի: Ծաղկոցն ու Նախակրթարանի առաջին երեք կարգերը չափազանց խճողուած էին: Վերջինները 3-4 զուգընթացներ կ'ունենային երբեմն: Լրացուցիչները կը բաղկանային ընդհանրապէս 15-20 աշակերտներէ: Ուսման ծրագիրը Կեդր. Ուս. Խորհուրդի որդեգրած Նախակրթարանի յատուկ նիւթերուն վերամշակումն էր: Հայերէնի եւ թուաբանութեան դասերուն լայն տեղ յատկացուած էր դասաբաշխումի ընթացքին: Դասարաններուն տրուած դասագիրքն էր որ կը բնորոշէր կարգերու ուսմ. աստիճանը: Տեսակ մը աւանդութիւնով ամէն դասախօս գիտէր թէ տարուան ընթացքին մինչեւ ո՞ւր պէտք է հասցնէր իր աւանդած նիւթը իւրաքանչիւր դասարաններու մէջ: Հետեւաբար, երբ ուսուցիչը կը փոխուէր, դասարանին յառաջդիմութեան չափն ալ միեւնոյնը չէր մնար: Վերի դասարաններուն մէջ դասագիրք կը պակսէր եւ ուսուցիչը ստիպուած էր ինք լրացնել այդ պակասը իր կարելի միջոցներով: Այս միեւնոյն կացութիւնը կը տիրէր գրեթէ գաւառական բոլոր վարժարաններու մէջ եւ ուսուցչին կարողութիւնը միակ ազդակն էր ճեղքելու համար դասարանին զարգացման աստիճանը:

Վարժարանին մէջ հայերէն խօսիլը պարտաւորիչ յայտարարուած էր: Սակայն իրենց մօր կաթին հետ թրքերէնով սնած, թրքական ոճով թրծուած ուղեղներու համար, որքա՜ն դժուարին եւ յոգնեցուցիչ էր հայերէնով արտայայտուիլը: Թուրքերէն մտածել եւ հայերէնով բացատրուիլ, կամ թուրքերէն շարադրուած նախադասութիւն մը անմիջապէս մտովի հայերէնի վերածել եւ խօսիլ. ահա դժուարութիւններու աղբիւրը: Մարդ յաճախ ունկնդիր կ'ըլլար հայախօսութեան մը, որուն բառերը միայն հայերէն էին, իսկ մտածման կերտուածքը թուր-

քերէն: Տեղացի ուսուցիչներն անգամ չէին կրնար դուրս գալ այդ երկաթեայ շրջանակէն եւ անոնց հայախօսութիւնը յաճախ զուգաւորուած էր թուրքերէն ոճերով, շեշտերով եւ առոգանութիւնով: Աշակերտները իբրեւ օտար լեզու պարտաւորուած էին սորվիլ հայերէն լեզուն եւ առաջին տարին իսկ հոն կը տարուէր որ տղոց ականջները լեցուին մայրենի լեզուի բառերով: Միջին դասարաններու մէջ տղաք բաւականաչափ իւրացուցած կ'ըլլային հայերէնը եւ լրիւ կը հասկնային, ինչ որ կը խօսուէր իրենց դասի ընթացքին: Իսկ երբ կարգը գար բացատրելու, կարճ եւ հատուկտոր բառեր եւ նախադասութիւններ միայն գործածելու կարող կ'ըլլային: Այս պատճառով Կեսարացի տղաք իւրացնելու մէջ յաջող, իսկ արտայայտուելու մէջ տկար կ'երեւային:

Այդ տարին, Սահմանադրութեան բարիքներէն մին եղաւ արտադպրոցական երիտասարդաց միութեան մը կազմութիւնը — իր նախաձեռնութեամբ — *Հայախօսաց* անուան տակ: Նպատակն էր, տեղական կեանքի երկու կարեւոր կեդրոններուն, շուկայի եւ տան մէջ մայրենի լեզուի տարածումը: Խանդավառութիւնը մեծ էր եւ վարակիչ: Այդ արտաքին բորբականէն ազդուած, տղաք սկըսան ինքնաբերաբար ոյժ տալ հայախօսութեան դպրոցական շրջանակին մէջ: Այս շարժումը շուտով ծաւալ գտաւ նաեւ տուներէ ներս, ուր հայերէն խօսիլը ծաղրանքի առարկայ էր ժամանակ մը: Գեղեցիկ էր այդ ճիգը եւ յուզիչ: Դարերու բռնակալ լուծին տակ պարտուած մեր հայրերուն հիասքանչ լեզուն, կը խորտակէր իր գերութեան շղթաները եւ կը հրաւիրուէր իր գահը գրաւելու հին եւ նոր սերունդի սրտին մէջ: Դպրոցին մէջ տղաքը հայերէն խօսեցնելու յատուկ պատժական դրութիւնը, որ տարիներէ ի վեր կը գործադրուէր մեծ դժուարութիւններով, ինքնին աւելորդ դարձաւ այլեւս այդ շրջանին: Մանկավարժական եւ հոգեբանական տեսակէտով մեծ նուաճում մըն էր այս պարագան: Կեսարացի տղան, մինչ այն. մասնաւոր հոգածութիւն ցոյց կուտար միայն այն դասերուն,



ԿԻՒՄՇԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾԱՂԿՈՑԸ



որոնք գործնական կեանքի մէջ կրնային սատարել իր յառաջացման: Այդ նախասիրութեան պատիւը կը վայելէին մեծ մասամբ թուրքերէնի եւ թուաբանութեան դասերը, որոնք կը նպաստէին շուկայի յաջողութեան ամուր յենարաններ: Հայերէնը երկրորդական տեղ մը կը գրաւէր անոնց սրտին մէջ. ի՞նչ բանի կրնար ծառայել ան ապագային: Բայց շնորհիւ Սահմանադրութեան ընծայած ազատութեան, ազգայնութեան ալիքը բարձրացաւ, ծաւալեցաւ ու պարուրեց մինչեւ շուկայի ու տուներու մթնոլորտը, գրաւեց սրտերը եւ արժէքներու նոր գնահատումի մը մղեց Կեսարական շուկային միտքը: Այսպէս Հայ լեզուն դարձաւ ընտանեկան սեփականութիւն. կարեւոր յաղթանակ ազգ. տեսակէտով: Շնորհիւ լեզուին Հայ գրականութիւնը աստիճանաբար մուտ գործեց տուներէ ներս: Կեսարիոյ հայութիւնը ազգայնօրէն արթնցած էր:

Այսքան հոծ աշակերտութիւն ունեցող կրթարան մը, դժբախտաբար շատ անհաստատ պիւտճէի վրայ հիմնուած էր: Մնայուն եկամուտը շատ չնչին մէկ մասը կը կազմէր 550–600 ոսկի տարեկան ծախսին: Կիւմշեան կտակէն 40–50 ոսկի: Մելքոնեան եղբայրներէ 25 Ե. Ո.: Տղոց թոշակներէն 120–150 ոսկի: Կարողութիւն ունեցողները տարեկան 20–40 դրշ. հազիւ կը վճարէին: Կար չքաւորներու մեծ թիւ մը, անկարող թոշակ վճարելու: Պիւտճէին մեծ մասը կը հոգացուէր եկեղեցւոյ հասոյթներէն: Վարժարանի բարձրացման ամէն առաջարկ կը բախէր նիւթական արգելքներու: Խճողուած սրահները թեթեւցնելու հնարաւորութիւն չի կար: Նոր պաշտօնեաներու պէտքը զգալի էր: Կարգ մը դասարաններ չափազանց բազմաթիւ էին: Այս հարցերը կը մնային անլուծելի նիւթական պայմաններու չգոյութեան հետեւանքով:

Դպրոցական ներքին աշխատանքներու համար անհրաժեշտ էին բնագիտ. եւ բնապատմական իրեր ու գործիքներ: Բայց ի՞նչպէս կարելի էր հայթայթել:

Ուսուցիչներու թոշակներու վճարումն ալ երբեմն անկանոնութեան կը մատնուէր, բայց Ազգ. իշխանութիւնը կարելին կը գործադրէր, նոյնիսկ փոխառութիւն կ'ընէր դժգոհանքի տեղի չտալու համար:

Թող Խորհուրդը դարման մը տանելու համար զինքը պրկող նիւթական անձկութեան, գրաւոր դիմում մը ըրաւ Մելքոնեան եղբայրներու (Եգիպտոս) որ կրկնապատկեն զոնէ իրենց տարեկան նպաստը (25 Ե. Ո.) եւ այդ առթիւ արծարծեց նաեւ վարժարանի նոր շէնք մը կանգնելու միտքը: Յոյս կար որ իբրեւ նոյն թաղեցի եւ Կիւմշեան վարժարանի նախկին աշակերտ՝ Մելքոնեան եղբայրները ընդառաջ պիտի երթային այսպիսի ազգասիրական առաջարկի մը: Պատասխանը մերժողական եղաւ եւ մեծ վրդովում պատճառեց...»:

*Գ. Գաբրիէլ Թագւորեան, յետոյ կը խօսի ուսուցչական կազմին վրայ, որ գրեթէ երեք տարի անփոփոխ մնացած է։ Իսկ անոնց պաշտօնավարութեան մասին կու տայ խիստ շահեկան տեղեկութիւններ, որ երբեմն մեր բնակավայրներուն իսկ հիմա սփիւռքի հայութեան կրթական կեանքին ամէնէն վիրաւոր մասը կը կազմէ։*

*«Ուսուցիչները ընդհ. զարգացումով համեստ, սակայն գործին փորձառութիւնը ունեցող և աշխատելու տրամադրուած թարմ ուժեր էին մեծ մասամբ։ Ամէնէն ուշագրաւ երեւոյթը, ինչ որ կը յատկանշէ այսօր ալ Հայ ուսուցչութիւնը, ինքնազարգացման պակասն էր։ Իրենց առօրեայ դասէն դուրս ուրիշ հետաքրքրութիւն չունէին։ Չէին շահագրգռուիր ո՛չ մէկ շարժումով, ո՛չ մանկավարժական, ո՛չ գրական, ո՛չ ազգային։ Ինչ որ տեսած, ուսած էին իրենց աշակերտական շրջանին մէջ, հաւատարմաբար կը պահէին նոյնութեամբ։ Քարացած էին իրենց ըմբռնումներուն մէջ։ Յարատեւօրէն թերթ կար-*



դացողներ բացառութիւն կը կազմէին անոնց մէջ։ Անոնց գերագոյն մտահոգութիւնը պաշտօնի ապահովութեան հարցն էր։ Այդ նպատակին հասնելու համար իրենց ամբողջ ուշադրութիւնը կեդրոնացուցած էին թաղային ընտրութեանց վրայ։ Կը ջանային իրենց համակիր շրջանակը Ազգ. իշխանութեան գլուխ բերել և անոր շնորհիւ ապահովել պաշտօնի յարատեւութիւն։

«Թաղին մէջ մէկ քանի խմբակներ, որոնց տիրական դէմքը անպատճառ հարուստ աղա մըն էր, կը պայքարէին իրարու դէմ Ազգ. իշխանութիւնը ձեռք ձգելու համար։ Անգամ մը իշխանութեան տիրացած, այդ ազդեցիկ խմբակը պաշտօնէ կը դադրեցնէր իրեն հակակիր ուսուցիչներ,— ինչպէս կը պատահի մինչև հիմա— և կը վար-





ձատրէր համակիրները, առանց ուշադրութեան առնելու ո՛չ առաջիններու օգտակար պաշտօնավարութիւնը և ո՛չ վերջիններու ապիկարութիւնը մանկավարժական տեսակէտով։ Դիւրին է երեւակայել չփացած ուսուցիչներու շարքը, որ յառաջ կու գար այս քմահաճ կարգադրութենէն և դժուարութիւնները՝ վարժարանը կառավարելու տեսակէտով։ Տեսչական հեղինակութիւն, դպրոցական կարգապահութիւն, կ՛ստորադասուէին միշտ այսպիսի անոպայ ուսուցիչներու քմահաճոյքին։ Կարգապահութիւն հաստատելու ամէն փորձ կը հանդիպէր բլիք կազմած չփացած ուսուցիչներու ըմբոստացման, որուն հետեւանքով վարժարանի կարգուսարքը կը խանգարուէր։

«Այդ տարիներուն դեռ կուսակցական պայքար գոյութիւն չունէր

Կեսարիոյ մէջ։ Կուսակցութիւնները (Դաշնակցութիւն, Հնչակ) ազգային գործերը գլխաւորելու չափ ոյժ գոյացուցած չէին դեռ։ Երեք տարի վերջն է որ — երբ ես հրաժարած էի արդէն — ծայր տուած է կուսակցական հակամարտութիւնը և կազմուած է Հնչակեան Թաղ. Խորհուրդ մը Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ։ Այսպէս, թաղին մէջ ազդեցիկներու պայքարը տեղի տուած է կուսակցականին։ Պատմական սխալ է պնդել որ կուսակցութիւններն են որ իրերամարտութիւն յառաջացուցած են մեր ազգ. կեանքին մէջ։ Այդ իրերամարտութիւնը միշտ ալ գոյութիւն ունեցած է մեր իրականութեան մէջ։ Ինչ որ փոխուածէ պայքարի էութիւնը, ձեւը և հանգամանքներն են միայն»։

Կիւմշեան վարժարանի տնօրէններէն ծանօթ են.

Դանիէլ Սարաֆեան (1881-1896), Երուանդ Երկաթ (յետոյ Տ. Աշոտ) (1896-1904), Յակոբ Թիմուրեան (յետոյ Տ. Արիստակէս) (1904-7), Յակոբ Զամուրեան (1907-8), Գաբրիէլ Թագւորեան (1908-1911), Մինաս Մինասեան (1913)։ Իսկ ուսուցիչներէն՝ հոն երկար ատեն պաշտօնավարութիւն ունեցած են Մկրտիչ Ուղուրլեան որ աւելի քան 40 տարի եկեղեցին լուսարար և դպրոցը դասատու եղած է, Կարապետ Ժամկոչեան, Արսէն Տէօքմէճեան, Սաղաթիէլ Կէմիճեան (յետոյ Տ. Ղեւոնդ քհ.), Դանիէլ Պօյաճեան, Կարապետ Ալէկէօզեան, Յարութիւն Պօյաճեան (1889 ֆրանսերէն), Մելքիսեդեկ Մէլէճեան (1892 գծագրիչ), Պետրոս Սէֆէրեան (1892), Յակոբ Պոհճէլեան, Տ. Մեսրոպ Սահակեան ( 1894 - 1897 ), Աւետիս Մերտինեան, Յարութիւն Զօլաքեան, Հմայեակ Ուղուրլեան, Միքայէլ Խէմէնճեան (1896-1901), Կարապետ Էլիպէօյիւքեան (յետոյ բժիշկ 1896-1901), Եղիազար Տ. Եղիազարեան (1896), Յարութիւն Յոփանեան, Տիգրան Էրքիլէթեան (1896), Յակոբ Թիմուրեան (յետոյ Տ. Արիստակէս քհ. 1896), Համբարձում Սարաճեան, Արսէն Սարաֆեան (1907), Պետրոս Տիլսիզեան (1907-1911), Գէորգ Երլանճեան (1907-11), Արամ Պատանեան, Հայկազուն Թաշճեան, Յակոբ Էվէրէկլեան (1907-11), Յակոբ Յովհաննէսեան, Նազարէթ Պէյլէրեան Յովհաննէս Մանուկեան (1908-11), Արամ Մաճառեան (1908 ձայնաւոր) Մերուժան Բակլայեան, Մարտիրոս Պարսամեան, Զաքէոս Թօքաթլեան (1908-1911), Կարապետ Աւագեան (1910-11)։

5. ԱՐԱՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Արամեան աղջիկներու վարժարանը, եկեղեցիներու շրջափակէն դուրս, առանձին գեղեցիկ հաստատութիւն մըն էր, կառուցուած Պաճիչէ Պաշը կոչուած թաղին կեդրոնը ընդարձակ պարտէզի մը կազմած բացատանին առաջը։ Անոր կցուած էր պատերազմէն քիչ առաջ ընդարձակ տուն մը որ վերածուած էր մանկապարտէզի։ Գեղեցիկ ուսումնասրահ մը և վայելուչ պարտէզ մը ունէր։

Այս հաստատութեան հիմնարկութիւնը Կեսարացիք կը պարտին իրենց Կ. Պոլիս հաստատուած հայրենակիցներուն որոնք նկատի ունենալով որ մինչև 1860 Կեսարիոյ մէջ իգական սեռի դաստիարակութեան ոչ մէկ կարեւորութիւն տրուած է, 1860 Դեկտ. 11ին կը հիմնեն «Կեսարիոյ մէջ աղջկանց վարժարան» մը բանալու նպատակով «Արամեան Ընկերութիւնը, և կը ձեռնարկեն հանգանակութեան մը, որուն գլխաւոր մասնակցողները կ'ըլլան.



| | | |
|---|---|---|
| Հաճի Մանուկ աղա Մանուկեան . . | 15000 | ղրշ. |
| Գրիգոր աղա Քէլէկեան . . . . . | 5000 | » |
| Յովհաննէս աղա Ս. Կիւմշեան . . . | 5000 | » |
| Հաճի Սարգիս աղա Զամքէրթէնեան . | 5000 | » |
| Յակոբ աղա Պէյլէրեան . . . . . | 2500 | » |
| Բարսեղ աղա Քէլօղլանեան . . . | 2000 | » |
| Նշան աղա Գավուքճեան . . . . | 2000 | » |
| Յ. Ղ. Պ. . . . . . . . . . . | 2000 | » |
| Հաճի Սերովբէ աղա Կիւլպէնկեան . | 2000 | » |
| Բարսեղ աղա Պալեան . . . . . | 1500 | » |
| Կարապետ աղա Գալբաքեան . . . | 1500 | » |
| Հաճի Մինաս աղա Ինէճեան . . . | 1500 | » |
| Միքայէլ աղա Ենովքեան . . . . | 1500 | » |
| Հաճի Յովհաննէս աղա Իսթանպօլլուեան | 1500 | » |
| Նազարէթ աղա Քէչիչեան . . . . | 1500 | » |
| Սարգիս աղա Գըզըլեան . . . . | 1500 | » |
| Բ. Ա. Ն. աղա Շահպազեան . . . | 1500 | » |
| Հաճի Գէորգ աղա Պօտոսեան . . : | 1500 | » |

և աւելի նուազ գումարներով շատեր (տես Միւնատի, թ. 54 և 136) և 1861 Փետր. 12ին (Մասիս, 1861, Մարտ 1, թ. 473) առաջին անգամ անդրանիկ բաժանորդները ժողով գումարելով եօթը անձերէ բաղկացեալ առժամեայ յանձնաժողով մը կը կազմեն թէ՛ Կ. Պոլսոյ և թէ՛ Կեսարիոյ մէջ բաժանորդ աւելցնելու և ընկերութեան կանոնագիրը պատրաստելու համար։

Յանձնաժողովին անդամներն էին Կ. Պոլսոյ մէջ Մ. Մանուկ աղա Մանուկեան (Ատենապետ), Մատթէոս Այվատեան (Ատենադպիր), Գալուստ աղա Թախտապուրունեան (Գանձապետ), Գրիգոր Քէլէկեան, Միքայէլ Ենովքեան, Յովհաննէս Կիւմշեան, Սարգիս Զամքէրթենեան։

Այս ընկերութեան գլխաւոր աշխատողներն եղած են, Մ. Մանուկ և Սենեքերիմ Մանուկեան եղբայրները և Յովհաննէս Կիւմշեան, որոնք որքան կրթասիրական նոյնքան ալ կուսակցական եռանդով աշխատած են, հակակշռելու համար Ֆրէնկեաններու կուսակցութեան Հայկազեան Ընկերութիւնը որ 1859ին վերազմուած էր։

Արամեան ընկերութեան վարիչները յաջողեցան հաւաքել(1) և իբր դրամագլուխ Օսմ. Քօնսօլիտի վերածել 1500 ոսկի գումար մը, որմէ յետոյ բացին վարժարանը որ մատակարարուեցաւ մինչև 1877-78, Օսմ. կառավարութեան սնանկութիւնը և այդ պարտաթուղթերու արժէքազրկումը, այս գումարին տոկոսներով, ազատ Առաջնորդարանի հսկողութենէն և Ֆրէնկեաններու միջամտութենէն։

Մանուկեան եղբայրները՝ այս վարժարանին նուիրած էին նաև Վէզիր խանի մէջ թ. 21 և 32 սենեակները և անոնց առջև կամարներուն տակ բեֆէ մը՝ ուր դերձակներ կ'աշխատէին։ Եէնի խանի դիմացը թ. 2 խանութին 11/15 բաժինը, նոյն տեղը թ. 4 խանութը, Կլամազ

(1) Առաջին հաշուեկշիռը (11 Դեկտ. 1860—31 Դեկտ. 1861) որ հրատարակուած է Միւնատիի մէջ (թ. 145) ցոյց կու տայ թէ ընկերութիւնը արդէն ունեցած էր 1000 ոսկի մուտք, 750 ոսկի հանգանակութենէն և 300 ոսկի շահ։

խանին մէջ մթերանոց մը, Հաճի Նուհ շարշուին մէջ թիւ 50 և 54 խանութները, Իւկիճիլէր շարշուսի մէջ [թ]. 29 խանութը, Ալթ պազարի մէջ թ. 119 խանութը, Բամպուգճըլար շարշուսի մէջ գետին մը, և խանութ մը (թ. 80), Իւկիւշէհիրի այգիներուն մէջ Զալըլըգի մը կէսը և Քէօշկ Իօնիւի մէջ Զալըլըգի մը ամբողջը, այն ատենուան գնահատութեամբ համագումար 600 ոսկի արժէքով (Պետրոս Մարթաեան)։

1878էն յետոյ՝ երբ իր հիմնադրամը փճացաւ վարժարանը մատակարարուեցաւ Մանուկեան եղբայրներու կտակած կալուածներուն տարեկան 30 ոսկի եկամուտով և աշակերտուհիներուն թոշակներով։

Մինչև 1890ական թուականները երբ Հայոց դէմ հալածանք գոյութիւն չունէր և կրթական ընկերութիւնները ազատօրէն կը գործէին, Արամեան ընկերութեան մասնաւոր վարժարանը կը նկատուէր ան և ազգային վարժարաններու շարքին մէջ չէր հաշուուէր։ Յետոյ դարձաւ ազգային։ Այն ատեն փակուեցաւ Հայկունեան վարժարանը և միայն աղջիկներու յատուկ վարժարան մնաց Արամեանը։

1883ին վարժարանը ունէր 100է աւելի աշակերտուհիներ (Ց. Գ. Զամուրեան, Մասիս, թ. 3403), իսկ 1901ին՝ 400 աշակերտուհի, 2 ուսուցիչ և 8 ուսուցչուհի և ամսական 1500 ղրշ. ծախք որուն 800 ղրշ.ը թաղային սնտուկէն և 700 ղրշ.ը թոշակներէն կը գոյանար։

Արամեան վարժարանը մասնաւորապէս 1895էն յետոյ իբր իգական սեռի կրթութեան յատուկ միակ յարկ՝ շատ օգտակար եղած է կեսարիոյ։ Ունէր տարրական նախակրթարանի ծրագիր։

Միշտ ունեցած է իր յատուկ խնամակալութիւնը։

Արամեան աղջիկներու վարժարանին առաջին ուսուցիչը եղած է Մ. Յակոբ աղա Լաչինեան (Պետրոս Մարթաեան) որ շատ երկար պաշտօնավարութիւն ունեցած է։

Արամեան վարժարանի տնօրէններէն ծանօթ են.

Տէր և Տիկին Կարապետ Ապահունի (1889-1901),
Տէր և Տիկին Կարապետ Եարուճեան (1901),
Դանիէլ Պօյաճեան (1905–1907),
Հմայեակ Ուղուրլեան (1910–1915).

Ուսուցիչներէ յիշատակուած է Յակոբ Միրաքեանեան (1889), Գարեգին Նահապետեան (1905-7 այցելու), Կարապետ Ժամկոչեան (1905-7 այցելու), Տիկին Գունտուրաճեան (1905-7), Օր. Կիւլինիա Պուտաղեան (1905-7), Օր. Գայեանէ (1905-7), Տիկին Հայկուհի (1905-7), Աշոտ քհ. Երկաթ (1906–1908) ևայլն։

6. ՄԻԱՑԵԱԼ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ.— Առանձին առանձին վարժարաններու անջատ մատակարարութեան պատճառած ուժասպառութիւնը կեսարացիներու ուշիմ աչքերէն չէր վրիպած և երկու անգամ, 1886ին և 1889ին շատ կարճ տեւողութեամբ փորձ եղած էր մէկ վարչութեան տակ միացնել վարժարանները՝ թէ՛ խնայողութեան և թէ՛ ուսումնական տեսակէտով օգտակար նկատելով այս միացումը, սակայն կարելի չէր եղած զսպել թաղային ինքնասիրութիւնները, որոնք շուտով պառթկացած էին։

1901ին դարձեալ այս գաղափարին շուրջ կեսարացիք կարծիքներու փոխանակութիւն մը կ'ունենան և մեծ դժուարութիւններով կը յաջողին 1902 Մարտ 1ին միացումը հռչակել։




ՀՈԳԱԲԱՐՁՈՒՔ, ՈՒՍՈՒՑԻՉՔ ԵՒ Բ. ՇՐՋԱՆԱՒԱՐՏՔ ՄԻԱՑԵԱԼ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ 1903-1904 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ

1. ՊԵՏՐՈՍ ՏԻԼՍԻԶԵԱՆ, 2. ԳԷՈՐԳ ՃԱՄՃԵԱՆ, 3. Մ. ԹԱԴԷՈՍ ՄՆՏԻԿԵԱՆ, 4. ՊՕՂՈՍ ԳԱԼԹԱՔԵԱՆ, 5. Մ. ԳՐԻԳՈՐ ՄԵԼԷՄԵԹՃԵԱՆ, 6. Մ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՊԵՕՃԻՒՔԵԱՆ, 7. ԵՐՈՒԱՆԴ ԵՐԿԱԹԵԱՆ (Տ. ԱՇՈՏ ՔՀ.), 8. ՀՄԱՅԵԱԿ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ, 9. ՓԱՆՈՍ ԷՖ. ԵՐԱԺԻՇՏ, 10. ՎԱՀԱՆ ԱՄԱՏՈՒՆԻ, 11. ԴԱՆԻԷԼ ՊՕՅԱՃԵԱՆ, 12. ՅԱԿՈԲ ՊՈՒՏԱՔԵԱՆ, 13. ՅԱԿՈԲ ԹԻՄՈՒՐԵԱՆ (Տ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ՔՀ.), 14. ՄԱՐԿՈՍ ԷՖ., 15. ՎԱՀԱՆ ՔԻՒՐՔՃԵԱՆ, 16. ԳԱՐԵԳԻՆ ՆԱՀԱՊԵՏԵԱՆ, 17. ՋԱՔԷՈՍ ՍԱՀԱԿԵԱՆ, 18. ԿԱՐԱՊԵՏ ԹՕՓԱԼ ԹՈՐՈՍԵԱՆ, 19. ԿԱՐԱՊԵՏ ԺԱՄԿՈՉԵԱՆ (ԿԻՒՆԿԵՕՐՄԷԶ), 20. ՊԵՏՐՈՍ ՍԷՖԷՐԵԱՆ, 21. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՋՕԼԱՔԵԱՆ (Տ. ԳԱՐԵԳԻՆ ՔՀ.), 22. ԱՐԱՄ ՄԱՃԱՐԵԱՆ (ԵՐԱԺԻՇՏ), 23. ՅԱԿՈԲ ՄՆՏԻԿԵԱՆ, 24. ՊՕՂՈՍ ՊՈՀՃԱԼԵԱՆ, 25. ՍԱՀԱԿ ՊԱՔՐՃԵԱՆ, 26. ՄԱՐՏԻՐՈՍ ՊԱՐՍԱՄԵԱՆ (ՋԱԹԻ ՄԷՋ ՍՊԱՆՆՈՒԱԾ), 27. ԵՐՈՒԱՆԴ ՏՐԴԱՏ ՄՕՐՈՒՔԵԱՆ, 28. ՎԱՐԴԱՆ ԳՈՒՆՏԱՔՃԵԱՆ:

Այս առթիւ կը կազմուի Հոգաբարձութիւն մը՝ երեք եկեղեցիներու թաղականութիւններէ։ Այս Հոգաբարձութեան կը մասնակցէին

| | |
|---|---|
| Թադէոս Մնտիկեան<br>Գրիգոր Մելէմէթճեան | Ս. Լուսաւորիչ թաղէն |
| Գէորգ Ճամճեան<br>Նշան Հալաճեան | Ս. Աստուածածին » |
| Յարութիւն Պէօճիքեան<br>Պօղոս Գալբագճեան | Ս. Սարգիս » |

Այս մարմինը պաշտօնավարեց մինչև 1904 Փետր.ի վերջ։ Իւրաքանչիւր Թաղ. Խորհուրդ յանձն առած էր վճարել ամսական 10 ոսկի։

Ս. Լուսաւորիչ, ասկէ զատ յանձն կ'առնէր Միացեալ վարժարաններուն տրամադրել Կիւմշեան վարժարանի հաշւոյն Մելքոնեան եղբայրներէն ստացուած տարեկան 50 ոսկին, իսկ Արամեան վարժարանը՝ իր կալուածներուն հասոյթը, որ տարեկան 50-60 ոսկիի կը հասնէր, և Մելքոնեան եղբայրներէն իր ստացած 20 ոսկին։

Տարեկան ամբողջ ծախքը մօտաւորապէս 750 ոսկի էր որուն 1/3 մասը հազիւ կը գոցէր աշակերտներու թոշակը։

Ընդհանուր աշակերտներուն թիւն էր 1204 (1), որոնցմէ 220ը աղջիկ։ 624 աշակերտ բոլորովին ձրի, 131 աշակերտ լիաթոշակ, մնացեալները նուազ թոշակ վճարողներ էին (2)։

---

(1)

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Կիւմշեան | վարժարանի | մէջ | կար | 618 | աշակերտ |
| Յակոբեան | » | » | » | 308 | » |
| Արամեան | » | » | » | 220 | » |
| Ուսումնարանի | | » | » | 58 | » |
| | | | Գումար | 1200 | |

(2) 1902 Մարտ 1–1904 Փետր. 28 երկամեայ ժամանակամիջոցին հասոյթները և ծախքերը հետեւեալ պատկերը կը ներկայացնէին (տես Բիւզանդիոն, թ. 3281).

Հասոյթներն էին.

| | | |
|---|---|---|
| 1. | Աշակերտներէ թոշակ . . . . . . | 54677 |
| 2. | Ս. Աստուածածին Թաղ. Խորհ.էն | 29376 |
| 3. | Ս. Սարգսի » » | 24480 |
| 4. | Ս. Գր. Լուսաւորիչ » » | 24480 |
| 5. | Մելքոնեաններէն . . . . . . . . . | 16400 |
| 6. | Արամեան վրժ.ի կալուածներէն | 4861 |
| 7. | Պնակներէն . . . . . . . . . . . . | 2813 |
| 8. | Մատաղագին և Նուէր . . . . . . | 2329 |
| | | 159416 ղրշ. |

Ծախսերն էին.

| | | |
|---|---|---|
| 1. | Թոշակ ուսուցիչներու . . . . . . | 148586 |
| 2. | Վառելիք, փայտ և ածուխ . . . | 3470 |
| 3. | Կարի մեքենայ և Մնկպտ.ի նիւթ | 2128 |
| 4. | Կալուածական տուրք . . . . . . | 1236 |
| 5. | Այլեւայլք . . . . . . . . . . . . | 2867 |
| | | 157687 ղրշ. |



Հայկեան վարժարանը Միացեալ վարժարաններու Ուսումնարանը եղաւ, որ բարձրագոյն Նախակրթարանի 3 տարեշրջանէն զատ կը բովանդակէր իբր լրացուցիչ կամ երկրորդական վարժարանի՝ մէկ դասարանը։

Հոն էր նաև Տարրական Նախակրթարանի բարձրագոյն դասընթացքը՝ որ միւս Նախակրթարաններուն միացուելով կարգ մը կազմած էր։ Հետեւաբար հոն կային հինգ դասարաններ, իսկ միւս վարժարանները (Յակոբեան և Կիւմշեան) Ծաղկոցի և Տարրական Նախակրթարանի կարգերը կը պահէին։

Եւ որովհետև կեսարիա 1899էն ի վեր զուրկ էր Մանկապարտէզէ, բոլոր ծաղկոցները (6–7 տարեկան տղաք) 2 տարիները մանկապարտէզը համարելով, Նախակրթարանաց դասընթացքները կը բոլորէին 5 տարեշրջանով, ի բաց առեալ աղջիկները, որ իրենց վարժարանին մէջ կը լրացնէին Տարրական Նախակրթարանի 6 դասարանները 2 տարի Ծաղկոցէն ետքը (Բիւզանդիոն, թ. 3281)։

Ս. Լուսաւորիչի թաղականութիւնը պայման դրած էր, միացման իր հաւանութիւնը տալու համար, Կիւմշեան վարժարանի տնօրէնը՝ Յակոբ Թիմուրեանը ընդհանուր տնօրէն նշանակել և միւս թաղերը համակերպած էին։ Իսկ ուսուցիչները, թուով 47, խառն կը պաշտօնավարէին չորս վարժարաններուն մէջ ըստ իրենց մասնագիտութեան։ Մասնաւորապէս լեզուներու, գիտութեանց, պատմութեան և այլ մասնագէտները կ'այցելէին՝ չորս վարժարաններն ալ, կանոնաւորապէս պատրաստուած ժամանակացոյցի մը համեմատ։ Ուսուցիչները կկոցի պէս կ'երթեւեկէին մէկ վարժարանէն միւսը։ Հայկեանի և Յակոբեանի շէնքերը 2–3 վայրկեանի հեռաւորութիւն մը ունենալով իրարմէ, դասամիջոցներուն իսկ՝ ուսուցիչներ մէկէն միւսը կրնային երթալ։ Իսկ Արամեան և Կիւմշեան վարժարանները կ'երթային կէսօրերէ վերջ, վասնզի հեռու էին (Հմայեակ Ուզունեանի տեղեկութիւններ)։

Ընդհ. տնօրէն Յակոբ Թիմուրեան իրմէ կարող ուսուցիչներու զգացումները չվիրաւորելու համար, կը գործէր ուսուցչական ժողովի որոշումներով։ Համերաշխական ոգին պահելու և միութիւնը երկարատև ընելու համար ամէն զոհողութիւն կ'ընէին ուսուցիչները։

Միացեալ Ուսումնարանին անդրանիկ շրջանաւարտները եղան, 1903ին՝ մանչերէն

Խաչատուր Տամլամայեան (յետոյ բժիշկ),
Կարապետ Զամուրեան,
Կարապետ Զէրչեան.

իսկ աղջիկներէն՝

Մարինէ Սրէնջեան,
Հրանոյշ Մնտիկեան,
Նուէր Թօփուզեան,
Կուսինա Կէմիճեան,
Շամիրամ Քէչեան,
Կիւլինէ Պէնլեան,
Նոյեմա Գալայճեան.

Միութիւնը կը շարունակուի մինչև 1906 (Բիւզանդիոն, թ. 3281) օգտակարապէս, յաջորդ տարիներուն ալ տալով ընթացաւարտներ։

Սակայն, ինչպէս տեսնուած երեւոյթ մըն է, ինքնասիրութիւնները թոյլ չտուին որ այս գեղեցիկ գործը շարունակուի։ Կեսարացիք սակայն գործնական մարդիկ շուտով կ՚անդրադառնան իրենց սխալին և կը վերակազմեն միութիւնը 1909ին։

Այս անգամ Ուսումնարանը փոխադրուեցաւ Յակոբեան վարժարանի շէնքը (Բիւզանդիոն, թ. 3951)։

Ընդհ. տնօրէնը եղաւ Վահան Քիւրքճեան։ Այս կազմով կը շարունակուի մինչև 1915, բոլորելով արդիւնաւէտ տարիներ, տալով երկրորդական կրթութիւն առած հետեւեալ երիտասարդները։

1910–1911 դպրոցական տարուոյն վերջ.— Հայկ Սաատէթեան (Հալէպ), Եղնիկ Սահակեան (Ամերիկա†), Սարգիս Կիւրիւնլեան (արտօնատէր և տպարանատէր «Հայեկ» շաբաթաթերթի), Դանիէլ Թահթապուրունեան (Լոնտոն), Սեդրաք Պալթաեան (Երկաթուղիի պաշտօնեայ), Օննիկ Մէրտինեան (Ամերիկա), Յակոբ Եսայեան, Յակոբ Ջատրճեան († Պաղտատ):

1911–1912ին.— Օննիկ Պալգճեան (Փարիզ), Բիւզանդ Ալլահվէրտեան (այժմ բժիշկ), Մելիքօֆ Փիրանեան (այժմ բժիշկ), Վահան Ալաճաճեան (Աղեքսանդրիա), Յակոբ Նալչաճեան (Սուրիա), Գառնիկ Պալթաեան (?)։

1912–1913ին.— Մանուէլ Պէյլէրեան (Գահիրէ), Կարապետ Բէմպէճեան (մեռած), Յակոբ Խաչերեան (Անտիոք), Կարապետ Մայիսեան (սպաննուած), Տիրան Ջատրճեան (Աղեքսանդրիա), Արամ Գատէմեան(?), Յակոբ Պալթայեան (սպաննուած), Ստեփան Պալթայեան (?), Սահակ Գույումճեան (Կեսարիա), Միհրան Թաշճեան (Կեսարիա), Կարապետ Բաթրնաեան (սպաննուած), Կարապետ Թիւֆէնքճեան (Կ. Պոլիս), Արամ Թաշճեան (?), Բարսեղ Մէլէմէթճեան (մեռած)։

1913–1914ին.— Մինաս Քացախեան (Մարսէյլ), Հայկ Ուղուրլեան (Հալէպ), Յակոբ Սարըեան (?), Արշակ Հիւրմիւզեան (Ռումանիա), Կ. Սվաճեան, Նշան Նազգաշեան (Պուլկարիա), Տիգրան Դերճանեան (սպաննուած), Մանուէլ Մնտիկեան (?)։

1912ին վարժարանը իբր 7 տարուան իտատի վաւերացնել տալու համար պետութենէն, ձեռնարկ կ՚ըլլայ (Ազատամարտ, 1912 Օգոստ. 1, թ. 952) և 1913ին կը յաջողի։

Այս ժամանակամիջոցին Ազգ. Իշխանութեանց մատակարարութեան տակ գտնուած վարժարանները կը յաճախէին մօտաւորապէս 2000ի չափ երկսեռ աշակերտներ, որոնց 1400ը մանչ և 600ը աղջիկ։

Վարժարանները կը պահէին իրենց առանձին պիւտճէները, բայց ամէնը միասին առնելով՝ մօտաւոր հաշուով 1300–1400 լիրա ծախս ունէր, այսինքն իւրաքանչիւր աշակերտի համար տարին 60–70 ղրշ.ի գումար մը (Ազատամարտ, 1912 Օգոստ. 1, թ. 952)։

«Ուսումնարան»ը ունէր առանձին Հոգաբարձութիւն (Ազատամարտ, նոյն)։

7. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶՆԵՐ.— Առաջին անգամ 1895–1896ին Կեսարիոյ մէջ մանկապարտէզ մը կը հիմնուի Տիկ. Վարդուհի Թիմուրեանի վարչութեան տակ (Բիւզանդիոն, թ. 86)։ Այս մանկապարտէզը ունէր 120 երկսեռ աշակերտներ 1897ին (Բիւզանդիոն, թ. 105) սակայն յետոյ 1899ին փակուեցաւ։ 1902ին դպրոցներու միացումէն յետոյ վարժա-



րաններու Հոգաբարձութեան բարեացակամ տնօրէնութեամբ և երեք սիրուած երիտասարդներու աշխատակցութեամբ, կրկին կը բացուի մանկապարտէզ մը 1903ին, որուն պէտքը այնքան զգալի էր (Մանզումէ, 1903 Դեկտ. 24, թ. 755)։ Առաջին անգամ իսկ 80ի չափ երկսեռ մանուկներ կը հաւաքուին, հազիւ 10%ը կեսարացի մանուկներուն։ Մանկապարտէզը նախապէս Արամեան վարժարանին կից էր։ 1905ին երեք Թաղ. խորհուրդներու կողմէ հայթայթուած 250 լիրա գումարով մը կը գնուի մանկապարտէզի յատուկ շէնք մը և հոն կը փոխադրուին 100էն աւելի փոքրիկներ (Բիւզանդիոն, թ. 2585)։

Մանկապարտէզն ունէր յատուկ Հոգաբարձութիւն և երեք վարժ ու կարող վարժուհիներ (Նոյն)։

1910ին Ս. Լուսաւորիչ թաղին մէջ ծայրագոյն փողոցներէն՝ Չէլ ալտըի մէջ հաստատուեցաւ երկրորդ մանկապարտէզ մը եւս Տոք. Լեւոն Փանոսեանի նախաձեռնութեամբ։ Այս երկրորդ մանկապարտէզը կը յաճախէին շուրջ 100 երախաներ։

8. «ՀՈԳԵՍԻՐԱՑ» ԿԱՄ ՏԻԿՆԱՆՑ «ՊԱՐՋԱՍԻՐԱՑ» ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Կեսարիոյ բոշաներու թաղին մէջ 1886ին «Հոգեսիրաց» կամ «Տիկնանց Պարզասիրաց» ընկերութիւնը հիմնած էր աղջիկներու վարժարան մը որուն որքան տեւած ըլլալը ինծի անծանօթ կը մնայ (Վտարանդին, Մասիս, թ. 3845)։

Այս թուականին վարժարանը ունէր 65 աշակերտուհի, երկու վարժուհիներով և ամսական 150 ղրշ. ծախքով (Նոյն)։

9. ՄԱՐԿՈՍԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Մասնաւոր վարժարան մը որուն ե՞րբ և որո՞ւ ձեռքով հիմնուած ըլլալը չեմ գիտեր։ Իր տեղը պէտք է ըլլայ Ս. Սարգիս եկեղեցւոյ մօտերը։

1870–1871ին անիկա գոյութիւն ունէր (Համառ. Քաղ. Ժողովի) հետեւաբար, հաւանօրէն 1860ական թուականներու վերջերը հիմնուած պէտք է ըլլայ։ 1886ին ան դեռ կը շարունակուէր և ունէր իբր աշակերտ այդ թուականին 70–80 մանուկներ (Վտարանդին, Մասիս, թ. 3845)։

10. ՃԵՄԱՐԱՆ (1847–1850).— Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեան ինչպէս տեսնուեցաւ (էջ 937) 1847 Ապրիլ 8ին բացած էր «Ճեմարան» անուն վարժարան մը որ միայն երեք տարուան կեանք մը ունեցած է, և փակուած, վասնզի իր պաշտպանը և հովանաւորը Սարգիս Արզըեան մեռած է։

10ա. Տ. ՄԱՐՏԻՐՈՍ ՔՀ.Ի ՎԱՐԺԱՐԱՆ.— Տ. Մարտիրոս Քհ. Նիկողոսեան 1870ին դարձեալ կը հաստատէ մասնաւոր վարժարան մը, որ մինչև 1875, այս անգամ հինգ տարի, կը շարունակուի։

10բ. Տ. ՄԱՐՏԻՐՈՍ ՔՀ.Ի ՎԱՐԺԱՐԱՆ.— 1881ին Կ. Պոլսէն Կեսարիա դառնալէն յետոյ Գ. անգամ Տ. Մարտիրոս քհ. կը փորձէ մասնաւոր վարժարան մը հաստատել։ Այս վարժարանը 1886ին տակաւին կը շարունակուէր (Վտարանդին, Մասիս, թ. 3845) և ունէր 150–200 աշակերտ։ Արդէն ըսած եմ (էջ 937) թէ այս ուսուցչական քահանան Կեսարիոյ մատուցած է կրթական տեսակէտով խիստ մեծ ծառայութիւններ, հասցնելով բազմաթիւ բանգէտ աշակերտներ, որոնք գործնական կեանքի մէջ շատ կարեւոր տեղ գրաւած են։

11. ԿԱՐԱՊԵՏ ԱԼԱԿԷՕՁԵԱՆԻ ՎԱՐԺԱՐԱՆ. — *Այս մասնաւոր վարժարանը որ հիմնուած էր Կարապետ Ալակէօզեան անուն ուսուցիչի կողմէն, կը թուի թէ մի քանի տարի կեանք ունեցած է։ Անիկա կը շարունակուէր* 1886*ին և ունէր* 70–80 *աշակերտներ (Վտարանդին*, Մասիս, *թ.* 3845)։ *Մինչև ե՞րբ շարունակուած ըլլալը չեմ գիտեր, սակայն կը կարծեմ թէ* 1880*ական թուականներու վերջը անիկա փակուած է, վասնզի դպրոցին հիմնադիրը՝* 1892*ին Կիւմչեան վարժարանի մէջ կը վարէր կառավարիչի կամ ընդհանուր հսկողի պաշտօն։*

12. ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆ.— *Կաթոլիկ դաւանութեան յարող Հայեր հազիւ թէ երեւան ելած, Յովհաննէս եպ. Հաճեան, Կեսարիոյ Հայ-Կաթողիկէ առաջնորդը, անմիջապէս Քիչի Գարու թաղին մէջ ընդարձակ տուն մը վարձելով* 1860*ին հոն կը հաստատէ եկեղեցի մը և թաղային դպրոց մը, որ կը շարունակէ իր գոյութիւնը տասը տարիներ։* 1870*ին մասնաւոր հրաւէրով և համաձայնութեամբ Կեսարիա կու գան Յիսուսեան կրօնաւորներ, որոնք Շիրէմէնլի բռնուած թաղին մէջ կը հաստատեն բարձրագոյն Նախակրթարանի աստիճանով դպրոց մը, և յանձնառու կ'ըլլան Ֆրանսերէնի համահաւասար աստիճանով հայերէն լեզուն ալ սորվեցնել։*

*Միեւնոյն ժամանակ եկած են նաև Ֆրանսացի Սէն Ժօզէֆի կարգին մայրապետները եւ որոնք առանձին աղջիկներու վարժարան մը բացած են։ Այս երկու վարժարանները, որոնք Հայ Կաթոլիկ դպրոցներու դերը կը կատարէին, շատ ծաղկեալ վիճակ մը ունեցած են,* 1000*էն աւելի աշակերտներ ունենալով մշտապէս։*

1871–72*ին Հայ կաթոլիկ վարժարանը իր անջատ գոյութիւնը կը պահէր* (Համ. Կեդր. Վարչութեան, 1872-73), *մինչ* 1886*ին անիկա ձուլուած է Յիսուսեանց վարժարանին մէջ ուր կը պաշտօնավարէին երեք Յիսուսեան կրօնաւորներ և երկու Հայ-կաթոլիկ վարդապետներ, ունէր* 150 *աշակերտներ և* 6 *պաշտօնեաներ (Վտարանդին*, Մասիս, *թ.* 3845)։

*Էմմանուէլեան Պօղոս եպ. երբ Ս. Խաչ հոյակապ եկեղեցին կառոյց Գէօյիւք Ճէշմէ Էօնիւ կոչուած քաղաքին լաւագոյն թաղերէն մէկուն մէջ, անոր կից կառոյց փոքր դպրոց մը, և ստացաւ եօթնամեայ իտատիի աստիճանով, Հայ-կաթողիկէ երկսեռ մանկանց համար մասնաւոր երկու վարժարաններ բանալու կառավարական արտօնագիր, և արդարև բացաւ վարժարան մը որ իր գոյութիւնը պահեց միշտ, սակայն թաղային տարրական Նախակրթարանի մը աստիճանէն բնաւ չբարձրացաւ։ Աշակերտներու թիւը* 100*ի մօտ էր* 1897*ին* (Բիւզանդիոն, *թ.* 105)։

*Միայն* 1914*ին երբ համաշխարհային պատերազմի պատճառով, իբր թշնամի պետութեան հպատակներ, Յիսուսեան վարդապետները և Սէն Ժօզէֆի կարգին մայրապետները, վտարուեցան Կեսարիայէն, այն ատեն անոնց կրկնակ վարժարանները փոխադրուեցան Հայ Կաթոլիկ Առաջնորդարանի շէնքին ընդարձակ յարկաբաժինները և նոյն կազմով ամբողջ տարի մը, մինչև Հայոց զանգուածային տեղահանութիւնը, շարունակուեցան։*

*Թրքական կառավարութիւնը թէև փորձեր ըրաւ ասոր արգելք հանդիսանալու, սակայն ժամանակին ստացուած իտատիի արտօնագրին պատճառով չկրցաւ բան մը ընել։*



13. «ԱԶԳԱՍԻՐԱՑ» ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ.— *Ինչպէս արդէն յիշուեցաւ (էջ* 1056) *Աւետարանականք կամ Լուսաւորչականք ունէին իրենց յատուկ վարժարանները, մէկը՝ մանչերու յատուկ և միւսը՝ աղջիկներու։ Այս միութիւնը որ քանի մը անուններ փոխած էր, ինքն կը մատակարէր իր երկու վարժարանները (Վտարանդին*, Մասիս, *թ.* 3845) *որոնք սակայն շատ փայլուն վիճակ մը չունէին, և տարրական ծանօթութիւն մը հազիւ կու տային, թէև Աւետարանականք իրենց վարժարանին համար զոհողութիւն ընելու չէին վարանիր և յատուկ ուսուցիչները պատրաստելու ձեռնարկներ կ'ընէին (էջ* 1056) *ինչ որ պատուաբեր երեւոյթ մըն էր։ Հոն կ'ուսանէին* 100*ի մօտ աղքատիկ տղաքներ։* 1897*ին նոյնիսկ անոնց թիւը* 200 *էր* (Բիւզանդիոն, *թ.* 105)։ *Այս վարժարանը կը փակուի* 1909*ին* (Բիւզանդիոն, *թ.* 3951), *սակայն* 1911*ին կը վերաբացուի Հայկազուն Ք. Եագուպեանի տնօրէնութեան տակ և կը շարունակուի մինչև* 1915*ի տեղահանութիւնը։*

14. ԲՈՂՈՔԱԿԱՆՆԵՐՈՒ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ. — *Բողոքականներու մանչերու վարժարանը կը գտնուէր Էյլա Գարու կոչուած թաղը, գրեթէ փարսախ մը հեռու՝ իրենց եկեղեցիէն։ Նախապէս այս վարժարանը կը գտնուէր Քիչի-Գարու բռնուած տեղը ուր մեծ շէնք մը գնած և եկեղեցիի և դպրոցի վերածած էին Բողոքականք,* 1860*ական թուականներուն։*

1876–8*ին Պատ. Քերովբէ Եագուպեան իր Ակովտիոյ մէջ հաւաքած*



ՀԱՅ ԲՈՂՈՔԱԿԱՆԱՑ ԺՈՂՈՎԱՐԱՆ
(տես յատակագիծը էջ 1051)

դրամով նոր ժողովարանը կառուցած ատեն կը շինէ նաև այս վարժարանը, որ բարեկարգ նախակրթարան մըն էր։

Հոն պաշտօնավարած են իբր ուսուցիչ Կարապետ Գույումճեան (1875–1880), Հայկազուն Եագուպեան, Կարապետ Գունտագճեան, Տիգրան Էլքիլէթեան, Սեդրաք Առուրեան։

15. ԲՈՂՈՔԱԿԱՆՆԵՐՈՒ ԱՂՋԻԿՆԵՐՈՒ ՎԱՐԺԱՐԱՆ.— Բողոքականները ունէին նաև իրենց աղջիկներու վարժարանը, որ կը գտնուէր իրենց ժողովարանէն քանի մը տասնեակ քայլ հեռու, Պէօյիւք Զէչմէ ջօնիւ Թաղին մէջ։ 1886ին վարժարանը ունէր 60 աշակերտուհի։ Ունէր միայն վարժուհի մը և օգնական մը։ Իսկ տարեկան ծախքն էր 35 ոսկի (Մասիս, թ. 3845)։

16. ԱՐԴԷՈՍ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՎԱՐԺԱՐԱՆ.— Բողոքականները իրենց երկու սեռերուն համար ունեցած նախակրթարանէն զատ 1883ին հիմնած են բարձրագոյն վարժարան մը նիւթական նպաստովը՝ Կարապետ Թէլֆէեանի և այլ բարեկեցիկ բողոքականներու։ Վարժարանին հիմնադիրն էր Հայկազուն Եագուպեան, որ իր բարձրագոյն ուսումը ստանալէ յետոյ Կեսարիա երբ դարձաւ այս վարժարանը կազմակերպեց։ Արգէոս կամ Երճիաս բարձրագոյն վարժարանին մէջ կ'աւանդուէին ալճէպրա, երկրաչափութիւն, եռանկիւնաչափութիւն և աստեղագիտութիւն, անգլիերէն ևայլ։

1886ին աշակերտներուն թիւն էր 40, տարեկան ծախք՝ 50 ոսկի (Մասիս, թ. 3845)։ 1887ին տուած էր իր առաջին շրջանաւարտները։ Այս վարժարանին ուսուցչապետները եղած են՝ Հայկազուն Եագուպեան (1883–1887, 1891–1903 և 1907–1911 պարբերաբար երեք անգամ) և Լեւոն Մարաշլեան (1887–1891)։

## Է.

## Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔԻ ՎԱՐԺԱՐԱՆ

Կեսարիոյ Հայ վարժարանները որոնք ցարդ ներկայացուցի, ունէին տեղական կարեւորութիւն մը իբր ծխական կամ համայնքային վարժարաններ, և սոսկ տարրական նախակրթարանի կամ շատ շատ բարձրագոյն նախակրթարանի մը հանգամանքը և միայն իրենց շրջանակին համար կարեւորութիւն ունէին։ Այս պատճառով զանոնք համախմբեցի մէկ դասու մէջ։

Սակայն Կեսարիա ունեցած է բարձրագոյն կամ երկրորդական վարժարան մըն ալ որ ո՛չ միայն Կեսարիոյ քաղաքին և անմիջական շրջանակին այլ բովանդակ Հայ ազգին մատուցած է ամենամեծ ծառայութիւն, դժնդակ տարիներու՝ Փոքր Ասիոյ կեդրոնավայրին մէջ հանդիսանալով Հայ պատանիներու համար ուսման վառարան մը։

Այդ արդիւնաշատ հաստատութիւնն էր Ս. Կարապետի վանքին բարձրագոյն վարժարանը, որուն հիմնարկութեան պարագաներուն անդրադարձած եմ Տրդատ եպ. Պալեանի առաջնորդական պաշտօնավարութեան վրայ խօսած ատենս (տես էջ 946–947)։

Տրդատ եպ. Պալեան, հաստատելով այս վարժարանը, սոսկ իր անհատական նախաձեռնութեամբ (տես նոյն), Ս. Կարապետի վանքը, որ



պորտաբուծարանի մը վերածուած էր, կը դնէր վանքի մը վայելուչ դիրքին մէջ և դարձեալ զայն կը դարձնէր ուսումնավայր մը, ինչպէս էր (տես էջ 1080–1084) մինչև ԺԹ. դարուն սկիզբը և նոյնիսկ թերեւս քիչ մըն ալ յետոյ։

Բայց այն օրերէն սկսեալ, երբ դպրոցներ բացուեցան քաղաքին մէջ, և շրջակայ գիւղերը, ինչպէս Կեսարիոյ բոլոր վանքերը, նոյնպէս նաև Ս. Կարապետի վանքը, կորսնցուց իր կարեւորութիւնը և գոցեց իր դուռները հասարակութեան առջև, և անոր մէջ հազիւ փոքրաւորական դրութեամբ դաստիարակուիլ սկսան անոնք որոնք միաբան ըլլալու միտում ունէին և հաստատ երաշխիք կ'ընծայէին։

Երկար ատեն այս անշուք վիճակին մէջ մնաց վանքը, ուր դաս ու դասարան գոյութիւն չունեցաւ, թէև վաղանցուկ փորձեր եղած են Յակոբ եպ. Աճէմեանի (1829–1865) և Եղիա եպ. Դերձակեանի (1865–1886) առաջնորդութեանց շրջաններուն։

Յակոբ եպ. Աճէմեանի փորձը 1830ին Ս. Կարապետի մէջ վարժարան մը բանալու՝ քաջալերուած նոյնիսկ Պէզճեան Յարութիւն Ամիրայէ, ինչպէս տեսնուեցաւ (էջ 936) զոհ գնաց կուսակցական հակամարտութեանց, ինչպէս 1845ին Յովհ. Ամիրա Սէրվէրեանի օժանդակութեամբ բացուած գիշերօթիկ վարժարանը 1849ին փակուած էր կուսակցական վէճերու պատճառով (Ուրհանեակ թ. 732)։ Իսկ Եղիա եպիսկոպոս Դերձակեանի օրով Կ. Պոլիս հաստատուած սրտցաւ Կեսարացիներու կողմէ ինքնաբերաբար կատարուած ձեռնարկը՝ հիմնադրամ մը գոյացնելու և վանքին մէջ ճեմարան մը հաստատելու համար, իր պաշտօնին գիտակից եկեղեցականի մը՝ նպաստաւոր առիթ մը պիտի ըլլար իրեն անուն մը շինելու համար, սակայն Եղիա եպ. ինչպէս տեսնուեցաւ, իր թոյլ և անհոգ նկարագրով, չկրցաւ օգտագործել գեղեցիկ պատեհութիւնը։

Արդարև երբ 1868ին, Կ. Պոլսոյ մէջ Կեսարացիները Ս. Կարապետի վանքին մէջ գիշերօթիկ վարժարան մը բանալու նպատակով կը կազմեն «Կեսարիոյ Ս. Կարապետի վանուց Ուսումնասիրաց Ընկերութիւնը» և զայն վաւերացնել կու տան Պատրիարքարանին (Մասիս, 13 Յուլիս, 1868, թ. 857) և վանքին լուսարար Յակոբ վրդ. Ամբահամեանի ստորագրութեամբ ընդհ. կոչ մը կը հրատարակեն և հիմնադրամ մը գոյացնելու համար հանգանակութեան կը ձեռնարկեն, Եղիա եպ. ոչ մէկ շարժում կ'ընէ, մինչ Յակոբ եպ. Հանէսեան էվէրէկցի այս ընկերութեան կը կտակէ 30 լիրա, և Յովհաննէս եպ. Մարաշցի 134 ոսկի (Մասիս, 21 Փետր. 1870, թ. 949)։

Ընկերութիւնը որուն վարչական ժողովի անդամներն էին (Մասիս, թ. 948 և Բիւզանդիոն, թ. 730) Յովհաննէս Կիւմշեան (Ատենապետ), Կարապետ Յ. Ուլպէկեան (Ատենադպիր), Սարգիս Կիւլպէնկեան (Գանձապետ), Սերովբէ Կիւլպէնկեան, Բարսեղ Հալաճեան, Յարութիւն Սահակեան, Տոք. Յարութիւն Թիրեաքեան՝ Յակոբ վրդ. Աբրահամեանի միջոցով հանգանակութիւն մը կը կատարէ Կ. Պոլիսէն, Զմիւռնիայէն, Աղեքսանդրիայէն և Կեսարիայէն և կը յաջողի ձեռք բերել 1000 ոսկիի գումար մը, ինչ որ քաջալերական երեւոյթ մըն էր։ Եթէ Եղիա եպ. գիտնար օգտագործել առիթը, ապահովաբար կատարուած պիտի ըլլար 1870ական թուականներուն ինչ որ 20 տարի յետոյ իրագործուեցաւ Տրդատ եպ. Պալեանէ, սակայն Եղիա եպ. չկրցաւ ունենալ

հեռատեսութիւն և ինքն եռանդով չփարեցաւ գործին, և միայն թոյլ շարժում մը ըրաւ 1872ին դպրոց մը բանալ փորձելով, որ սակայն կանոնաւոր կեանք ու տեւականութիւն չունեցաւ, վասնզի հանգանակուած 1000 ոսկի գումարը՝ որ Օսմ. Քոնսոլիտի վերածուած էր, 1878ին փճացաւ, և հազիւ 100 ոսկի արժէք մը ներկայացուց, այնպէս որ ծրագրուած ճեմարանը կարելի չեղաւ բանալ։ Սակայն Կիւլպէնկեան հարազատները նոյն Քոնսոլիտները կը պահեն ու տոկոսներն ալ բարդելով կ'աճեցնեն։

Ս. Կարապետի վանքը ուսումնարանով մը և բարձրագոյն վարժարանով մը օժտելու փառքը կը պատկանի Տրդատ եպ. Պալեանի որ ինչպէս ըսած եմ (էջ 946) իր առաջնորդական պաշտօնին ձեռնարկելէն յետոյ, ծրագրեց վանքին մէջ բանալ բարձրագոյն դպրոց մը և Դաւառական ժողովի կողմէ մերժումի հանդիպելէն յետոյ իր անհատական նախաձեռնութեամբը 16 աշակերտով բացաւ 1888 Մայիս 10ին և անոր վրայ գուրգուրաց մինչև վերջը, զայն դարձնելով իսկապէս բարձրագոյն վարժարան մը։



ՏՐԴԱՏ ԵՊ. ՊԱԼԵԱՆ
( Հիմնադիր Ս. Կարապետի Բարձրագոյն վարժարանին )

Վարժարանին բացումը կատարելէն յետոյ իր առաջին գործը եղաւ Կ. Պոլիս և արտասահման գտնուող Կեսարացիներու մօտ դիմումներ կատարել իր նորաբաց վարժարանին համար օժանդակութիւն և աջակցութիւն խնդրելու համար, մինչ այն՝ իր անձնական միջոցներով հոգալով դպրոցին անմիջական և անհրաժեշտ պէտքերը։

Իր այս դիմումները անպատասխանի չմնացին։ Յովհաննէս և Մկըր-



տիչ Էսաեան հարազատները, Նախապէս Կեսարիա գտնուող իրենց երկու մօրեղբայրներուն՝ Համբարձում և Կարապետ Մօստիչեաններու՝ կարծիքը առնալէ վերջ, կ'որոշեն եօթը տարուան համար 1000 հընչիւն ոսկի նուիրատուութիւն մը ընել վարժարանին, ի փոխարէն պահանջելով որ քսան ձրիավարձ ուսանողներ, իրենց հանգուցեալ հօր, Գէորգ աղայի անունով, կոչուին Գէորգ Էսաեան սաներ, և Ս. Գէորգի տօնին ալ, վանքին մէջ անոր հոգւոյն պատարագ և հոգեհանգստեան պաշտօն կատարուի։

Այս առթիւ կը կազմուի չորս անձերէ բաղկացեալ Հոգաբարձութիւն մը, որուն Էսաեանց կողմէ կ'անդամակցին՝ Մհտ. Համբարձում Մօստիչեան, Յակոբ Գալբագեան, իսկ Առաջնորդարանի կողմէ՝ Մ. Յարութիւն Կիւրիւնլեան, Յովհաննէս Քեահեաեան։ Ասոնք Տրդատ եպ. Պալեանի վերատեսչութեան տակ պիտի կառավարէին վարժարանը։

Տրդատ եպ. Պալեան՝ Էսաեան եղբարց այս նուիրատուութեամբ, Գէորգ Էսաեան սաներ հռչակեց այն 20 անդրանիկ աշակերտները, որոնք իր հրահանգով գիւղերու թաղ. Խորհուրդները ղրկած էին վանք իրենց դպրոցներու յառաջադէմ, քաջառողջ և աղքատիկ աշակերտներէն մին ընտրելով։

Տրդատ եպիսկոպոս Պալեան այս 20 սաներէն առաւ հայատառ թրքերէն յանձնառագիր մը, որով Գէորգ Էսաեան սաները կը խոստանային

Ա. կա՛մ վարդապետ, կա՛մ քահանայ և կա՛մ ուսուցիչ ըլլալ.

Բ. պաշտօնավարել կամ իրենց ծննդավայրին, կամ Կեսարիոյ վիճակին և կամ յարմար տեսնուած ուրիշ վիճակի մը թեմօրէից մէջ։

Գ. եթէ վարժապետ ըլլան, հինգ տարի շարունակաբար տարին առաւելն 24 ոսկի թոշակ ստանալ.

Դ. եթէ յառաջիկային՝ 1) դպրոցին շրջանը չլրացուցած դպրոցը ձգէին, 2) եթէ ուսում առնելէ յետոյ վերոնշանակեալ գործերէն ոչ մին չուզելով ուրիշ կերպով մը իրենց ապրուստը հայթայթէին, 3) եթէ վարժապետութեան պաշտօնին մէջ Գ. հատուածին տրամադրութեան հակառակ գործէին, այն ատեն իրենց դպրոցական ուսմանց շրջանին համար, տարին 12 ոսկի հաշուով, դպրոցին իրենց համար ըրած ծախքը հատուցանել(1)։

Այսպէս Տրդատ եպ. Պալեան ուզեց իր հիմնարկած հաստատութեան ազգային վերածնութեան որրան մը դարձնել և անկէ ազգին համար ալ օգուտ մը ապահովել, ազգին ծառայողներ հասցնելու համար այս կարգադրութիւնը ընելով։

Սակայն առաւելագոյն օգտակարութեան տեսակէտով պէտք էր որ թոշակաւոր աշակերտներ ալ ըլլային թէ թուով շատ ուսանողներ ունենալու և թէ դպրոցին նիւթական մատակարարութիւնը դիւրացընելու համար։

Ուստի Տրդատ եպ. Պալեան դպրոցը հասարակութեան ծանօթացընելու աշխատեցաւ։ Առաջին տարիներու ամրան տաք ամիսներուն իսկ արձակուրդ չտուաւ։ Վարդավառի Կիրակիին, եկեղեցիին

(1) Այս յանձնառագիրին պատճէնը տես Ընդարձակ Տարեցոյց, 1928, էջ 242–243։

մէջ, ուխտաւորներու ներկայութեան, դպրոցական հանդէս մը սարքեց։

Ուխտաւորներու բազմութիւնը, իրենց տեղերը դարձին, ամէն կողմ խօսեցան վարժարանին վրայ։ Կեսարացի հարուստներ, որոնք վանքը և շրջակայ օդասուն գիւղերը օդափոխութեան եկած էին, իրենց զաւակները, իբրև թոշակաւոր արձանագրել տուին։ Ուրիշներ անոնց օրինակին հետևեցան և Գէորգ Խասեան 20 սաներու վրայ աւելցան 20ի չափ ալ թոշակաւոր սաներ, որոնք շատ համեստ տարեթոշակով մը, միայն 10 հնչիւն ոսկիով, ստացան երկրորդական կրթութիւն։

Հետզհետէ հեռաւոր քաղաքներէ ևս սկսան թոշակաւորներ հասնիլ և դպրոցը ստացաւ համբաւ մը շնորհիւ իր հիմնադիրին որ աչալուրջ կը հսկէր այս հաստատութեան վրայ, այնպէս որ գաւառի հեռաւոր և մերձաւոր վայրերէն, Սև ծովու և Միջերկրականի եզերքներէն, նոյնիսկ Կ. Պոլիսէն, բազմաթիւ աշակերտներ ունեցաւ։ Այս նոր աշակերտներու թոշակներով, ինչպէս նաև ուխտաւորներու առատաձեռնութեամբ և յաճախ ի նշան գնահատութեան և երախտագիտութեան տուած նուէրներով, վանքին և վարժարանին միացեալ պիւտճէն կանոնաւորուեցաւ, ուսուցչական կազմը զօրացաւ և հաստատութեան տևականութիւնը ապահովուեցաւ։ Վանքին պարտէզները, արտերն ու այգիները մշակուեցան, ալիւրը և ձաւարը, կորկոտն ու կանդըրման, խաղողն ու չամիչը առատօրէն հայթայթուեցաւ։ Ուխտաւորներու թիւը բազմապատկուեցաւ, ինչ որ ոչ նուազ նպաստ մը բերաւ վանքին և վարժարանին։

Պալեան Ս. Ջնջեց հնօրեայ պտղի հաւաքելու դրութիւնը, միայն պահելով ապուխտի ծողովքը, որ տեղի կ'ունենար միայն Կեսարիոյ մէջ, Առաջ. Փոխանորդ Կէմիճեան Տ. Ղևոնդ քհ.ի ձեռամբ։

Թէև ոմանք անյարմար նկատած են վարժարանին վանքի մը մէջ հաստատուիլը, սակայն մեծապէս օգտակար եղած է այսպէս ըլլալը, նախ Թաղականներու և Հոգաբարձուներու քմայքէն ազատ մնալու տեսակէտով, և երկրորդ իբրև մեկուսի ու հանդարտ վայր, քաղաքէն հեռու, ինքնամփոփ աշխատութեան նուիրուելու համար։ Նոյնպէս շատ դժուար էր վարժարանին համար գտնել քաղաքին մէջ յարմար շէնք, այնքան ընդարձակ և օդասուն։

Արդարև Տրդատ եպ. Պալեան նախապէս վանքին միաբանական թաղին ամէնէն օդաւէտ սենեակները՝ յատկացուցած էր դպրոցին, ոմանք դասարանի և ոմանք ննջարանի վերածելով։ Փաշա օտասը կոչուած բարձրահայեաց սենեակը՝ երբեմն ննջարանի և ապա, լուրջ նորոգութիւնով մը, սերտողութեան սրահի վերածեց, միշտ մտքին մէջ ունենալով իր վարժարանը յատուկ գեղեցիկ շէնքով մը օժտելու գաղափարը, որ կը յայտնէ Կիւլպէնկեաններու 1899ին երբ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստանալէ յետոյ կը դառնայ Կ. Պոլիս։

Կիւլպէնկեանք կը քաջալերեն Պալեան եպ.ը և 1868–1870 թուականներուն Ուսումնասիրաց ընկերութեան համար Յակոբ Վրդ. Աբրահամեանի միջոցաւ հանգանակուած գումարի փճացումէն յետոյ իրենց քով աւանդ մնացած 1380 հատ B սեռի քոնսոլիտները, Ռումէլի երկաթուղեաց բաժնեթուղթ մը (800 ոսկի արժէքով) և 200 Օսմ. լիրա ալ հնչիւն դրամ կը յանձնեն իրեն (Բիւզանդիոն, թ. 730 և Ժամանակ,



թ. 5995)։ Տրդատ եպ. 200 օսմ. լիրան վանքին մէջ բացուած որբանոցին ծախքերուն կը յատկացնէ (Բիւզանդիոն, թ. 730), իսկ քոնսոլիտները և երկաթուղեաց բաժնեթուղթը կը գործածէ վանքին հիւսիսային կողմը Ս. Խաչ լերան լանջքին բարձրացնելու հսկայակերտ շինուածք մը բոլորովին ի նորոյ, օժանդակութեամբ Կեսարացի վաճառականներու (նոյնք)։

Այս շէնքը, որուն կառուցման արտօնութիւնը ստացած էր 1899ին և աւարտեց 1903ին, յատուկ կերպով իբր 120 գիշերօթիկ աշակերտներ պարունակելու և ամէն անհրաժեշտ պայման լրացնելու նախատեսութեամբ շինուած էր։ Ծախսուած էր՝ շինութեան համար 1500 ոսկի, որուն 800ը միայն տրամադրած են Կիւլպէնկեանք Ուսումնասիրաց ընկերութեան դրամագլուխէն և մնացեալ 700ը հայթայթուած էր հանգանակութեամբ, որուն համար Կ. Պոլսոյ մէջ նախաձեռնարկ եղած էր Գառնիկ Կիւլպէնկեան (Բիւզանդիոն, թ. 2043)։

Գալով ուսմանց ծրագիրին յայտնի է որ Տրդատ եպ. Պալեան այս վարժարանը բացած էր իբր սկզբնական նպատակ ունենալով սատար ըլլալ իր հօտին, հոն հասցնելով ուսուցիչներ և մանաւանդ եկեղեցականներ, և իբր ժառանգաւորաց վարժարան, սակայն քաջալերուած այն ընդունելութենէն որ անիկա գտաւ, փափաքեցաւ զայն դարձնել երկրորդական աշխարհիկ վարժարանի մը՝ համապատասխան ամերիկեան գոլէժներուն, որոնք լեցուն էին Հայ աշակերտներով։ Ուստի տակաւին Խասեան եղբարց յատկացուցած նպաստին պայմանաժամը չլրացած, 1889ին իբր ժառանգաւորաց վարժարան բացուած դպրոցը աշխատեցաւ վերածել գիշերօթիկ թոշակաւորներու վարժարանի մը և յաջողեցաւ 1893 (1309) Յունուար 28ին ստանալ արտօնագիր մը որով կրթական նախարարութիւնը կը ճանչնար Ս. Կարապետի վարժարանը, իբր Մէքթէպի Իտատի և Ալի (երկրորդական եւ բարձրագոյն դպրոց), երբ արդէն 20 ժառանգաւորներու դէմ դպրոցը ունէր 35 թոշակաւոր աշակերտներ (Փունջ, թ. 2387), որոնք անշուշտ ուխտ յանձնառութեան տակ չէին, և ո՛չ ալ հարկադրուած ուսուցիչ կամ եկեղեցական ըլլալու։

Աշակերտութեան այս մեծ թիւը հարկադրած է տալ հոն աշխարհական կրթութիւն։ Հոն կղերական ուսուցիչներ, ինչպէս նաև կրօնական ուսումներ չկային, այլ աշխարհական ուսուցիչներով կ'աւանդուէին երկրորդական վարժարանի մը դասերը և կը հասնէին պատրաստուած քաղաքացիներ։ Այսպէս վարժարանը եղաւ ո՛չ միայն Կեսարիոյ և շրջակայից, այլ նաև Փոքր Ասիական հեռաւոր քաղաքներու համար օգտակար հաստատութիւն մը, ուր իրենց ուսման ընթացքը աւարտելէ յետոյ, շատ երիտասարդներ յաջողած են քննութիւն անցնելու և ընդունուելու Կ. Պոլսոյ բժշկական վարժարանը, Պէյրութի ֆրանս. բժշկական վարժարանը և այլն։ Հետևաբար իրապէս գոլէճ մը եղաւ այս դպրոցը (Բիւզանդիոն, թ. 2059)։

Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան որոնք հոն ապրած են նախ իբր ուսանող և ապա իբր ուսուցիչ և այդ հաստատութիւնը կը ճանչնան, շատ մօտէն, կ'ըսեն թէ, «Վարժարանը կը կառավարուէր սրահական դրութեամբ: Կառավարիչի մը աչալուրջ հսկողութեան տակ տեղի կ'ունենային գիշերային սերտողութիւնները, որ վերի կարգերու համար կը տեւէր մինչեւ ժամը 11, եւ երբեմն ալ Նոյեմբերի եւ Դեկտեմբերի եւ Յունուարի երկար գիշերներուն՝ մինչեւ կէս գիշեր եւ աւելի: Սերտողութեան միջոցին՝ ճանճի մը բզզիւնն անգամ կը լսուէր, ինչպէս սովոր են ըսել»:



1898ԻՆ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԸ ԵՒ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

(տես թուաբերով անուանացանկը դիմացի էջը)



## 1898ԻՆ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԸ ԵՒ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

1. Տրդատ եպ. Պալեան, 2. Միսաք Տանճէ, 3. Դանիէլ Նշանեան, 4. Ներսէս Զաքարեան, 5. Յարութիւն Նշանեան, 6. Յարութիւն Ստեփանեան, 7. Ստեփան Խաբրեան, 8. Մկրտիչ Ինայէրեան, 9. եւ 10. Յովհաննէս եւ Գրիգոր Կարապետեան եղբարք (անտեսներ), 11 եւ 12. Կիւրիւնլեան եղբարք, 13. եւ 14. Սարգիս եւ Յովհաննէս Պրտիլիկեան (այժմ Պօղոսեան), 15. Դաւուտ Կարապետեան, 16. Յարութիւն Տամլամաեան, 19. Վահան Բոյատեան, 20. (?), 21 Սարգիս Խօրասանճեան, 22. եւ 25. Խ. եւ Վ. Խաչատրեան եղբարք, 23. եւ 28. Բամպուգճեան եղբարք, 24. Կարապետ Թաշճեան, 26. Կարապետ (Սինան) Սինանեան, 27. Կարապետ Թէնէքէճեան, 28. (?) 29. Յակոբ Մաքոսեան, 30. ? (Մկրտիչ Ինայէրեանի քեռորդին), 32 (?), 33. Արամ Սեղբոսեան, 34. Կարապետ Մրքրյեան, 35. Յակոբ Պէյլէրեան, 36. Կարապետ Սարկաւագ Էվէրեկցի, 37. Մամաս Զարդարեան, 38. Յարութիւն Սարկաւագ Էվէրէկցի, 39. Պետրոս Խաչիկեան, 40. Սարգիս Հինտլիեան, 41. Երուանդ Գազազեան, 42. 45. 46. 51. եւ 52. (?), 43. Յարութիւն Քէօլէեան, 44. Եղիա Սրվազլեան, 47. Յարութիւն Գասարճեան, 48. Տամլամաեան, 49. Կարապետ Ինճէեան, 50. Յարութիւն Սրվազլեան:

---



Ս. ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔԻՆ ՆՈՐ ՎԱՐԺԱՐԱՆԸ
*կառուցուած* 1903*ին Տրդատ եպ. Պալեանի ջանքերով*
(տես էջ 1135)

*Ուսուցչական կազմը մասնաւորապէս զօրացաւ* 1891–1892 *դպրոցական տարեշրջանին երբ ուսուցչութեան կոչուեցան հոն Կ. Պոլսոյ Կեդրոնական վարժարանի անդրանիկ շրջանաւարտներէն խումբ մը երիտասարդներ և զարկ տուին դպրոցին, որ հետզհետէ աւելի կանոնաւորուած շարունակեց մինչև* 1895*ի հայկական ջարդերու տարին, որ ատեն կը լրանար Խաչեան նուիրատուութեան եօթամեայ պայմանաժամը և վերջ կը գտնէր Հոգաբարձութեան ալ պաշտօնը։ Տիրող քաղաքական շփոթ վիճակը և անապահովութիւնը չատ՝ հաւանականութիւն չէին ընծայեր հեռուէն կամ մօտէն թոշակաւոր աշակերտներու գալստեան, մինչ հինները խուճապային անարեկումով կը մեկնէին, այնպէս որ աշակերտ չէր մնար և վարժարանը գոցուելու վտանգին առջև կը գտնուէր։ Սակայն Տրդատ եպ. Պալեան վարժարանը չգոցելու համար ամէն ջանք ըրաւ և հաւատարիմ իր սկզբունքներուն*(1), *զայն պահելու համար, շրջակայքէն որբեր ժողովեց և* 1 *Մայիս* 1897*ին Ս. Կարապետի վարժարանին կցեց Որբանոց–կրթարան մը* 40 *որբերով* (Բիւզանդիոն, *թ.* 221, *և* Արեւելեան Մամուլ, 1897, *էջ* 557)։

*Տրդատ եպ. Պալեան կոչով մը որ հրատարակուած է* Արեւելեան Մամուլ*ի մէջ* (1897, *էջ* 557-560), *կ'ըսէ թէ* «Քաղցր պարտականութիւն մ'ալ կատարելու գաղափարը ազդեց մեզ, այսինքն որբեր խնամել, որբեր, որք որբ են բառին բուն իմաստով եւ այդ գաղափարը ի գործ դնելու համար ամէնէն յարմար թուեցաւ ինձ յիշեալ վարժարանիս կցել նաեւ ՈՐԲԱՆՈՑ–ԿՐԹԱՐԱՆ մը:

Առ այդ անմիջապէս որբերու խնամակալութիւն մը ընտրեցի, իբր օգնական իմ այս ընդգրկած նոր եւ ծանր գործիս համար, որոյ անդամոց անուանք հրատարակուած էին *Բիւզանդիոնի* էջերուն մէջ եւ ընդունած էին 27 որբեր՝ որք պիտի հետեւէին, որքան կարելի է վարժարանին ծրագրին՝ որ արդէն տպեալ հրատարակուած է, բայց ասոնց աւելի գործնական օգուտ մը ընելու եւ ներկային հետ նոցա ապագան եւս ապահովելու համար որոշեցի նաեւ ուսուցանել տալ այլ եւ այլ արհեստներ:

Արհեստանոցն ալ բացուած է, վանքին մէջ շատ յարմար տեղ մը, մէկ կողմը *կօշկակարութիւն*, միւս կողմը՝ *կահագործութիւն*, եւ միւս կողմն ալ առանձին երեք սենեակներու մէջ՝ *գորգագործութիւն*, զորս այժմ որբերը սորված են ուսանիլ վարպետներու հսկողութեան ներքեւ, *Նկարչութեան* արհեստն իր ամէն ճիւղերով արդէն հաստատուած էր, ինն տարիներէ ի վեր եւ կը շարունակուի:

Բայց որովհետեւ հինգ ամիս առաջ Միսիոնարաց բացած Թալասու որբանոցին մէջ գտնուող որբերը՝ շատ դժգոհ ըլլալով իրենց վիճակէն, մեծաւ մասամբ սկսան փախչիլ եւ մեզ դիմել ու խնդրել որ զիրենք ալ ընդունինք ազգային սոյն որբանոցին մէջ, եւ որովհետեւ ասոնք ալ անհայր եւ անմայր էին, ի հարկէ ստիպեալ ընդունեցինք զանոնք ալ, որով որբոց թիւը այսօր հասաւ

(1) *Տրդատ եպ. Պալեան ըստ վկայութեան Հ. Ուղուրլեանի և Կ. Աբրահամեանի* (Ընդարձակ Տարեցոյց, 1928, *էջ* 245) *կ'ըսէ եղեր իր սաներուն* «Նեղ եւ ձախող օրերու մէջ պէտք է արի՛ ըլլաք, ինչ որ ալ ըլլան հարկեցուցիչ պարագաները, չգոցել երբեք վարժարանը: Օր մը, ժամ մը միայն գոցուելով, վերաբացումի հաւանականութիւնը կը նուազի: Միշտ բաց պահեցէ՛ք զայն: Եթէ աշակերտ մը իսկ չմնայ, ձեզնէ մին՝ ուսուցիչ, իսկ միւսը աշակերտ թո՛ղ ըլլայ, եւ անցնողը վարժարանի դուռը թող բաց տեսնէ, եւ ներսէն դասաւանդութեան ձայն թո՛ղ լսուի: Յաջող օրեր չեն ուշանար»:





Ս. ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔԻ ՄԵՐՁԱԿԱՅ ԷՖՔԷՐԻ ԳԻՒՂԻՆ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ
(Էֆքէրէի տեղագրութիւնը տես էջ 775 – 785)

38ի եւ քէպէտ մեր այս ձեռնարկը գրգիռ մ'եղաւ Միսիոնարաց՝ քիչ մը հոգ տանելու որբերուն, եւ նոցա հոգին եւ մարմինը նուազ ճնշելու, սակայն որովհետեւ դեռ այն եւ այդ մոլեռանդ տնօրէնին բիրտ ձեռքը կը մնայ մատաղ որբերուն վրայ, ուստի այն տեղի որբերը մէկ կողմէն մեզի կը դիմեն եւ մենք որոշեցինք մինչեւ 45 հասցնել մեր որբերուն թիւը:

Յիրաւի, Կեսարիոյ ազգային արդի տնտեսական տագնապալի վիճակը ի նկատի ունենալով, չըսեմ անկարելի, բայց շատ դժուարին եւ յանդուգն էր ներկայ պարագայի մէջ այսպիսի գործի մը ձեռնարկել, մինչ զուրկ ենք ոեւէ նիւթական միջոցէ. բայց միմիայն Աստուծոյ անբաւ գթութեան ապաւինելով եւ սիրելի ազգայնոց մարդասիրական զգացմանց վստահելով եւ ի սէր որբոց, լի յուսով եւ հաւատով, սկսանք այս գործին, եւ առաջին քայլին խրախոյս եղան եւ կ'ըլլան մեզի հայրենակից մեծաւոր եւ հեռաւոր ազնիւ եղբարց նպաստը. որք իրենց ներկայ անձուկ վիճակին մէջ իսկ, ինչ որ կարելի է չեն զլանար իւրաքանչիւրն ըստ կարի, բայց քանի որբերուն թիւը աճի, բնական է որ ծախքն ալ պիտի աճի:

Վարժարանս՝ բաց ի թոշակաւորաց՝ որոնց տարեկան թոշակն է 12 լիրայ եւ որք նաեւ ազատ են իրենց ընտրած արուեստին հետեւիլ, հրապարակով կը յայտնեմ ու կը կրկնեմ թէ պիտի պահեմ նաեւ 45 որբեր, եւ կը խնդրեմ մեր տոհմասէր եւ որբասէր ազգայիններէն որ ուր ուրէք եւ աշխարհիս որ կողմն ալ գտնուին Հայ բարեպաշտներ, կրնան նպաստել, եւ նաեւ այս որբերուն հայր եւ մայր եւ պաշտպան գտնուիլ...»:

*Արդարեւ Պալեան եպ. յաջողեցաւ այս դժուար գործն ալ յաջողութեամբ առաջ տանիլ, գործակցութեամբ իր ընտրած խնամակալութեան որուն անդամ էին* (Բիւզանդիոն, *թ.* 190)

*Գրիգոր Գունտագճեան*
*Համբար Տէտէեան*
*Կարապետ Մարթաեան*
*Գրիգոր Մէլէմէթճեան*
*Գրիգոր Թաշճեան*
*Դանիէլ Սարաֆեան*
*Առաքէլ Պարութճեան*
*Մկրտիչ Մէրտինեան*
*Մեսիա Գասապեան*
*Սարգիս Քէչկէկեան*

*Այս խնամակալութիւնը մինչեւ* 1901 *իր պաշտօնին վրայ էր* (Ընդ. Օրացոյց, 1900 *էջ* 351-352) *եւ միայն վերջին չորս անդամները քաշուած էին։*

*Տրդատ եպ. Պալեան այս խնամակալութեան ջանքերով ապահովեց տեղական նպաստներ, եւ անձնապէս ինքն ալ գլուխը ասդին անդին զարնելով եւ անվերջ դիմումներով յաջողեցաւ գտնել բարեսէր անձեր որոնք 20ի չափ որբեր իրենց պաշտպանութեան տակ առին տարեկան վեցական ոսկի վճարումով* (1)*։ Իսկ Օրմանեան Պատրիարք Նպաստից Սնտուկէն երկու անգամէն ղրկեց միայն* 100 *ոսկի, վստահ ըլլալով որ Տրդատ եպ. Պալեան պիտի կարենար հոգալ իր հիմնած որբանոցը։*

---

(1) *Միայն Թօփալեան եղբարք որդեգրեցին իրենց հայրենակից* 10 *Կիւրիւնցի սաներ։*



*1899ին առաջին 40 որբերուն վրայ աւելցան 11 որբեր եւս, վեցը Կիւրիւնցի եւ հինգը Տարէնտէցի, որոնք Պատրիարքարանի եւ կարգադրութեամբ առնուեցան Դաղատիոյ Ս. Աստուածածնայ վանքին փակուած Որբանոցէն* (Բիւզանդիոն, 10 *Հոկտ.* 1899, *թ.* 899)։

*Այս կերպով, որբերու թիւը բարձրացաւ 51ի, եւ որովհետեւ կային նաեւ 14 հատ թոշակաւորներ, աշակերտաց թիւը բարձրացաւ 65ի* (Բիւզանդիոն, *թ.* 899)։

*Այս կերպով ապահովուեցաւ վանքին վարժարանին տեւականութիւնը այդ դժնդակ տարիներուն։ Միայն երկու տարի* (1897 – 1899) *բարձրագոյն վարժարանը չկրցաւ շրջանաւարտներ ընծայել ազգին, վասնզի 1895–1896 դպրոցական շրջանին սկիզբը, դպրոցը կրցած էր ունենալ չորս կարգեր եւ նախապատրաստական դասարան մը, իսկ բարձրագոյն կարգերը կազմել կարելի չէր եղած։ Սակայն 1900էն սկսեալ մինչեւ 1915 Յուլիս, տեղահանութեան նախօրեակը, անիկա շարունակած է իր կանոնաւոր ընթացքը, տալով շատ նշանակելի արդիւնք մը որ անտեսել կարելի չէ։*

*Որբանոց կրթարանին շրջանը աւարտեցաւ 1903–1904ին վասնզի բոլոր որբերն ալ իրենց ընթացքը աւարտեցին, Ս. Կարապետի վարժարանին մէջ ուսում առնելով* (Բիւզանդիոն, *թ.* 2059)։

*Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը եւ որբանոցը, երկուքն ալ պատուաբեր հաստատութիւններ, Կեսարիա կը պարտէր իր մեծ առաջնորդին որ իր առաջնորդական պաշտօնին ամէնէն նուիրական պարտականութիւնը համարած էր իր վիճակին կրթական վերածնունդը եւ կը գուրգուրար իր հիմնարկութեան վրայ, որուն իրական տնօրէնը եւ վարիչը ինքն էր։ Իրեն անծանօթ չէին ամէն մէկ աշակերտի վիճակը եւ ընդունակութիւնները, մանաւանդ ուսուցիչներու կարողութիւնը։ Իրեն համար հաւասար կարեւորութիւն ունէին ուսուցիչին արդիւնքը, ուսուցանելու մեթոտը, եւ վերջապէս անոր աշակերտութեան մօտ վայելած համակրութիւնը։*

*Հ. Ուղուրլեան եւ Կ. Աբրահամեան իբր ականատես վկաներ կը հաստատեն թէ կորովի եպիսկոպոսը* «ուսուցչի մը՝ համբաւէն երբեք չէր տարուեր: Ուսուցիչ մը երբ ուսուցանելու գաղտնիքը չէր գիտեր, համալսարանական իսկ ըլլար կարեւորութիւն չէր ընծայեր անոր: Իր ուսուցիչներէն կը պահանջէր **անձնուիրութիւն՝** հանդէպ ստանձնած պարտականութեան, **սէր՝** իր խնամքին յանձնուած աշակերտութեան հանդէպ:

Ուսուցչին **արտաքին փայլէն** չէր խաբուեր, **անձին օրինակը** եւ **իրական արժանիքը** ամէն կարողութենէ կը գերադասէր: Այնպէս **որ իր վարժարանը միսթիք** մթնոլորտի մը տակ ինքնայատուկ դրոշմ ունեցող հաստատութեան վերածած էր:

Եղած են ուսուցիչներ, որոնց պաշտօնին մահը միայն վերջ տուած է: Պալեան Սրբազան, թէեւ **բծախնդիր** եւ **խստապահանջ** եկեղեցական մը, սակայն գիտէր ուսուցիչներուն եւ աշակերտներուն հետ վարուելու կերպը: — **«Ուսուցիչ մը, կ'ըսէր, որչափ ալ կարող ըլլայ, իր գիտութիւնը արժեցընելու, եւ նկարագիրը դրոշմելու համար, տարիներու կը կարօտի»** (*տես* Ընդարձակ Տարեցոյց, 1928, *էջ* 247)։

*Վարժարանը ունէր իր* գրական միութիւնը *որ շաբաթական հաւաքոյթներով, կը մարզէր աշակերտները*, խօսելու, գրելու եւ արտասանելու *մէջ։ Այս միութիւնը*, գործնական դպրոց *մըն էր դպրոցին մէջ, իր*




*Տրդատ եպ. Պալեանի աջակողմը՝ Վահան Թէքէեան, ձախակողմը՝ Սարգիս Մինասեան, իսկ մէջտեղի խումբը կը ներկայացնէ 1915–1916 շրջանի ուսուցչութիւնը. Գրիգոր Ալչըճեան (տնօրէն), Դանիէլ Նշանեան, Ներսէս Աւետիքեան, Գարեգին Նահապետեան, Գալուստ Մորճիկեան, Գրիգոր Զագըճեան, Սարգիս Արզումանեան։*



*մասնաւոր կանոններով, որոնք վաւերացուած էին հիմնադիրին կողմէն։ Շաբաթական գրական հաւաքոյթները կը կառավարուէին, աշակերտներուն քուէով ընտրուած* դիւանէ *մը, որուն պաշտօնը կը տեւէր տարի մը միայն։ Ան կը պատրաստէր օրակարգը, փոքրիկները արձակ կամ ոտանաւոր* ընտրուած կտորներ *կ'արտասանէին, իսկ մեծերը՝ ինքնագիր գրութիւններ, հայերէն, Թրքերէն և Ֆրանսերէն ընդմիջուած երգերով։ Երկու շաբաթը անգամ մըն ալ կը կատարէին* վինաքանական ժողովներ *Նիւթի մը շուրջ։*

*Ուսէ անյարմար գրութիւն, օրակարգէն դուրս կը ձգուէր, և անհարկի վիճաբանութիւնները կ'արգիլուէին Դիւանի Ատենապետին կողմէ։ Ատենադպիրը կը կատարէր արձանագրութիւնները, և դիւանին յարմար դատած գրութիւնները, կ'արձանագրուէին, հեղինակին ձեռագիրով, մասնաւոր տոմարի մը մէջ։*

*Մայիս 1ի, Բարեկենդանի, վկայականներու բաշխումի հանդէսներ, բոլորն ալ մաս կը կազմէին գրական միութեան։*

*Կեսարիայէն, շրջակայքէն մասնաւորապէս կու գային վայելելու այս հանդէսները, որոնք այնքան հռչակ հանած էին (տես* Ընդարձակ Տարեցոյց, *1928, էջ 241)։*

*Այսպէս զուտ հայացի մթնոլորտի մը մէջ, ընտրելագոյն ուսուցչական խումբի մը ջանքերով մարզուած և պատրաստուած պատուական երիտասարդութիւն մը հասաւ հոն որ իսկական յեղաշրջում մը մտցուց Կեսարիոյ Հայ կեանքին մէջ, ծառայելով ո՛չ միայն կրթական ասպարէզին՝ քաղաքին և անմիջական մօտիկ գիւղերուն և շրջակայ գաւառներուն, այլ կեանքի ամէն ասպարէզներուն մէջ գրաւելով փայլուն դիրք մը, որ իսկապէս պատիւ կը բերէր զիրենք կրթող հաստատութեան, որ արդիւնքն էր Տրդատ եպ. Պալեանի անձնական նախաձեռնութեան և ջանքերուն։ Ինքն էր անոր վարիչը և չարժող զսպանակը, անոր համար սիրտ ու հոգի մաշեցնողը և զայն այնքան օգտակար ու ազգօգուտ վիճակի մը մէջ դնողը։*

*Իր հակառակորդները չխնայեցին սակայն իր այս գեղեցիկ գործին ալ և զայն խանգարելու համար ամէն բան ըրին։*

*1909ին սկսաւ ըմբոստութիւն աշակերտութեան մէջ, անշուշտ արտաքին ազդեցութիւններով, և խանգարուեցաւ կարգապահութիւնը։*

*Տրդատ եպ. Պալեան արդէն մտադիր հրաժարելու 16 Փետրվար 1909ին վանքին ղեկը կը յանձնէ Գառ. ժողովին և կը ներկայացնէ 20 տարուան հաշիւները (տես վերը էջ 950) և ինքն կը քաշուի։ Սակայն անոնք որ կը յոխորտային չկրցան կառավարել վարժարանը, որուն ղեկը վերստին ձեռք առաւ 1909 Սեպտ.ին Տրդատ եպ. Պալեան երբ կեդր. Վարչութեան հրահանգով վերստանձնեց առաջնորդական պաշտօնը։ Վարժարանը բացուեցաւ 1909 Սեպտ.ին 40 աշակերտներով և դպրոցին կարգուսարքը խանգարող ուսուցիչներէն ո՛չ մին ունենալով իր ուսուցչական կազմին մէջ (*Բիւզանդիոն, *Թ. 3951)։ Սակայն Տրդատ եպ. Պալեանի հակառակորդները — ինչպէս տեսնուեցաւ (էջ 950)— չարունակեցին ապերախտ ու ապաշնորհ պայքարը, այնպէս որ անիկա վերջնապէս Կեսարիայէն մեկնեցաւ 22 Փետր. 1910ին։*

*Այս առթիւ Ս. Կարապետ վարժարանին համար կազմուեցաւ Հոգաբարձութիւն մը որուն կ'անդամակցէին,*

Մ. Թադէոս Մնտիկեան,
Մ. Գրիգոր Քեահեաեան,
Մ. Կարապետ Ճամճեան,
Գէորգ Ճամճեան.

Այս Հոգաբարձութիւնը փոխ-վանահայր Ըմբատ վրդ. Սալպաշ-եանի հետ պիտի վարէր վարժարանը (Բիւզանդիոն, թ. 4071), սակայն դժբախտաբար չկրցան վարել զայն խաղաղութեամբ, հակառակ որ անոնք կազմակերպուած գործի մը գլուխը կ'անցնէին։

1910-1911 դպրոցական տարին անցաւ ամբողջ ուսանողական խլրտումներով, որոնց դժխեմ դերակատարներն էին Դաշնակցական-




ՕՐԻՆԱԿ ՎԿԱՅԱԿԱՆԻ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՒԱՐՏԱԿԱՆՆԵՐՈՒ

ները, անշուշտ ո՛չ հայրենասիրաբար և ո՛չ ալ ազգին բարիքին համար այլ պարզապէս շահախնդրաբար։

Իրենց Կ. Պոլսոյ Օրգանը Ազատամարտ (տես 18 Հոկտ. 1911 թ. 710) չէր վարաներ գրելու թէ 1911 Սեպտ.ին վարժարանի վերաբացումը կասկածի տակ էր, միեւնոյն ատեն կը յարէր թէ սակայն գտնուած էին վարժարանին վրայ գուրգուրացող, անշահախնդիր հոգիներ՝ որոնք լոկ վարժարանին յարատեւութեան սիրոյն կանխելով սպառնացող վտանգը, ձեռք ձեռքի տուած էին և քաջութիւն ունեցած՝ Գաւ.



վարչութեան ժողովներուն մէջ ուսանողներուն **արդար բողոքներուն** թարգմանը ըլլալ:

Եւ որովհետեւ վարժարանը իբր հետեւանք այդ «արդար բողոքներուն»(!!) վերաբացուած էր կուսակցական պաշտօնէութեամբ Ազատամարտ կը հաղորդէր թէ «վարժարանը վերաբացուեցաւ գրեթէ նոր եւ կարող ուժերով» (Նոյն) և թէ «ուսանողութիւնը տեսնելով իր անհրաժեշտ պահանջներուն գործադրութիւնը՝ խմբովին դարձաւ վարժարան միասին բերելով իր կիսուն չափով նոր աշակերտներ եւ սկսաւ նորմալ աշխատանքին՝ **նախանձելի կարգապահութեամբ»** (Նոյն)։

Անուանուած նոր տնօրէնը՝ որ Կ. Պոլիսէն հրաւիրուած էր, նախապէս բարեյոյս՝ Դաշնակցական այդ թերթին մէջ կը գովաբանուէր ըսելով թէ անոր տնօրէն անուանուելէն յետոյ երեւոյթը մխիթարական էր և վարժարանը իսկական մանկավարժական ուղղութիւն ստանալու յոյս կը ներշնչէր, սակայն երբ երեւան կու գայ թէ տնօրէնը իրենց ձեռքը գործիք ըլլալու տրամադիր չէր, նոյն այդ լրագիրը կը փոխէր իր լեզուն ըսելով թէ «բայց հետզհետէ պարզուեցաւ որ պ. Յ.... հակառակ եղած յանձնարարութեանց իր վրայ դրուած յոյսերն իրականացնելու ի վիճակի չէր: Իր մտաւորական բացարձակ սնանկութիւնը, միամիտ, յամառ եւ impulsif բնաւորութիւնը եւ այլ նկատելի թերութիւնները՝ իր գոյութիւնը աւելի վնասակար կը դարձնէին դպրոցին համար քան թէ օգտակար: **Միւս ուսուցիչներու ամէն օգտակար թելադրութիւնները եւ բարի առաջարկները անոր կամայական ընդդիմութեան բախեցան»** (Ազատամարտ, թ. 952, 1 Օգոստ. 1912)։

Այսպէս կուսակցական հակամարտութիւնները Ս. Կարապետի խաղաղ մթնոլորտը յուզեցին և բարեկարգ ու խաղաղ աշխատութեան այդ բոյնը խանգարեցին։ Փոխանակ միակ վարիչի մը անոր պատասխանատուութիւնը ստանձնած էին Քաղ. Ժողովը և Ուսում. Խորհուրդը, 12 հոգինոց բանակ մը։ Պատասխանատուութիւնները ցրուած էին, և դպրոցին վրայ հակակշիռ գործադրել անկարելի դարձած էր։ Զրոյց կար թէ 300-350 ոսկի բաց մը կար։ Քաղ. Ժողովը դպրոցը փըրկելու համար կը կազմէր 5 հոգիէ բաղկացեալ Խնամակալութիւն մը, որ արմատական փոփոխութիւններ կ'ուզէր մտցնել վարժարանի մատակարարութեան մէջ, ձրի և կիսաթոշակ աշակերտները և Պատրիարքարանէն ղրկուած Սասունցի 5 ուսանողները ճամբելով։ Սակայն այս կարգադրութիւնները չէին կրնար սպառնացող վիճակին թումբ կանգնել, և կուսակցական այս քանդիչ ազդեցութեան չարիքը արմատախիլ ընել, մինչև որ Աբուլեան կը կոչուէր տնօրէնութեան և կը յաջողէր կարգ ու կանոնը վերահաստատել և դարձեալ այս հաստատութիւնը՝ դնել իրեն համար գծուած ուղիին վրայ, կատարելու համար գործ մը որ Ռ. Որբերեան իրաւամբ հրաշք կոչած էր։

«Հրաշք մը գործած է Տրդատ եպ. Պալեան, իրական հրաշք մը այս իրականութեանց դարուն մէջ, երբ վարդապետ տակաւին, գրպանին մէջ տասնեւութ դահեկան ունենալով իբր դրամագլուխ, կուրծքին տակ սիրտ մը արի եւ անվհատ, ու աչքերուն մէջ նայուածք մը որ դրապաշտիկ քաղաքի մը նեղ սահմաններէն հեռուն մտատիպարին կը սեւեռի, ասոնք ունենալով ձեռնարկած է հիմնարկութեան Ս. Կարապետի վանքին հսկայական վարժարանին» (Ռ. Որբերեան, Արեւելեան Մամուլ, 1903, էջ 967-8)։ Եւ նոյնիսկ չի վարանիր զայն սուրբերու կարգը դասելու (Նոյն)։

*Իսկ հետագայի* Ազատամարտի *խմբագրապետը՝ Ռուբէն Զարդարեան, որ թոյլ պիտի տար իր վարած թերթին սիւնակներուն մէջ կուսակցական դժխեմ հաշիւներով սեւցնելու Տրդատ եպ.ի պէս անբասիր և խակապէս կարող եկեղեցական մը,* 1904*ին* (Արեւելեան Մամուլ, 1904, *էջ* 586–589 *և* 610–615) *կը գրէր Ս. Կարապետի վանքը իր այցելութեան առթիւ թէ* «անակնկալն ու հիացումս մեծ եղաւ, երբ հոն գտայ կրթական հաստատութիւն մը՝ որուն նկատմամբ հեռաւոր գաւառներ գրեթէ լուր չունին, թող բուն վանքն ու իր շէն կազմուածքը, գեղեցիկ տնտեսութիւնը, ամրաշէն մասերը եւ ուխտաւորի խուցերը՝ ամէնքն ալ քարաշէն, որ պատիւ կրնան բերել ոեւէ համայնքի մը: ... Ինծի հաւաստեցին, եւ չհաւատալու բնա՛ւ պատճառ չկայ, թէ Տրդատ Սրբազան ասկէ 17–19 տարի առաջ երբ Կեսարիոյ Առաջնորդ ընտրուեցաւ եւ օր մը կիսաւիրուլ այս հաստատութիւնը երիտասարդացնելու գաղափարն յղացաւ. գրպանը *վաթսուն* փարա ունէր միայն եւ անով գործի սկսաւ: Յարատեւութեան, կամքի, շրջահայեցութեան եւ հոգեկան ինչ պաշտելի մեծութիւն պէտք եղած է այդ խոնարհ սկզբնաւորութենէն մինչեւ այսօրուան վիճակին հասնելու, թեւերու ինչ հզօր ճիգ այդ վայրերէն մինչեւ այս բարձրութիւնը թռիլ հասնելու»:

*Եւ ուրիշ ինչեր, ի՛նչ գովեստներ Տրդատ եպ.ի հասցէին, և անոր գործին՝ վարժարանին համար, որ հոս արտագրել կը վարանիմ, պարզապէս խնայելու համար նահատակ գրագէտին բարոյականի ու նկարագրի այն պղտիկութիւնը ուր ինկած էր անշուշտ կուսակցականութեամբ: Առանց ասոր անմեկնելի պիտի մնար այս հակասութիւնը որ* 1904*ին և* 1912*ին Ռ. Զարդարեաններու միջև կը տեսնուէր:*

*Տրդատ եպ. Պալեանի գործը դիւցազնական էր, միջավայրը և պայմանները նկատի առնող և տրամաբանել գիտցող ոեւէ մարդու համար և կարելի չէր չհիանալ իր այս գործին համար որ այնքան հաստատ հիմերու վրայ դրած էր որ իրմէ յետոյ ալ ան ապրեցաւ, հիացումին ու գնահատութեան առարկան ըլլալով բոլոր անոնց որ գիտեն ու կը հասկնան:*

*Մեր արդի եկեղեցականութեան ամէնէն պատկառելի և կրթական հասկացողութիւն ունեցող դէմքը՝ Երուսաղէմի Պատրիարք Ամեն. Տ. Թորգոմ Ս. Արքեպ. որ իր Սեբաստիայէն դարձին* 1913 *Նոյեմ.* 9*ին պատեհութիւնը կ'ունենայ այցելելու Կեսարիա, Ս. Կարապետի վանքին վարժարանին վրայ խօսելով կ'ըսէ Ան.* «Մեր բոլոր վանքերուն մէջ, ամենէն ուշագրաւներէն մէկն է այսօր առաւելապէս իբրեւ կրթական հաստատութիւն, որ *ժառանգաւորաց* անունին տակ, առողջ եւ գոհացուցիչ կրթութիւն եւ ուսում կը բաշխէ 26 տարիներէ ի վեր իր շրջավայրի Հայութեան: Պէտք մըն էր այդ վարժարանին գոյութիւնը այդ շրջանին համար, ուր չէր կրնար հասնիլ ո՛չ ոեւէ ամերիկեան գոլէճի ազդեցութիւնը, եւ ո՛չ ալ մայրաքաղաքի կրթական հոսանքներուն ոյժը, քառորդ դար մը առաջ, երբ տակաւին չկային երկաթուղիի յարաբերութեանց այժմու դիւրութիւնները: Այդ պէտքը կշռելու իմաստութիւնը եւ անոր գոհացում տալու ջանասիրութիւնը ունեցած է Տ. Տրդատ եպ. Պալեան, Կեսարիոյ նախկին Առաջնորդը:

Երբեք չեմ տեսած, բայց Ս. Կարապետ այցելելէս ի վեր քաջ կը ճանչնամ զինքը, վասնզի անձ մը իր գործերէն դատելու սկզբունքն ամէնէն ուղիղ կանոնն է անշուշտ: Տրդատ եպ. մէկն է այն երջանիկ մարդերէն, որոնց անունը երկար ատեն կապուած պիտի մնայ կրթական հաստատութեան մը կեանքին ու արդիւնքներուն հետ:



Իր հասարակական ըմբռնումներուն կամ առաջնորդական գործունէութեան մասին խօսելու իրաւունք չունիմ հոս, չեմ գիտեր թէ որքան ճշմարտութիւն կայ այդ մասին իրեն նկատմամբ յայտնուած թեր ու դէմ կարծիքներուն մէջ: Բայց ինչ որ շօշափելիօրէն ճշմարիտ է ինծի համար, այն է թէ Ս. Կարապետի վանքը, քառորդ դարու իր բարգաւաճ դրութիւնն եւ ապագայի ըստ ինքեան ապահովուած կացութիւնը կը պարտի այդ կորովի մարդուն. իր ամէնէն թունդ հակառակորդները, անոնք նոյնիսկ, որոնց համար անոր դէմ հակառակիլը տեսակ մը հրայրք է դարձած, կը խոստովանին այս պարագան: Տրդատ եպ.ի վերաբերմամբ կիրքերը կը լռեն Ս. Կարապետի մենաստանէն ներս, ու կը խօսին քարերը միայն:

Հոյակապ վարժարանն ընդարձակ բարձրաձեղուն սրահովը, դասարաններովը, տեսչարանովը, բարձրահայեաց զոյգ ննջարաններովը, ուսուցիչներու սենեակներովը, սեղանատուն ու խոհանոցովը. ամէնքն ալ համակ քարուկիր, արդիւնքն են իր ջանքերուն:

Իրեն համար բախտաւորութիւն մըն է եղած անշուշտ որ Էսաեան եղբարց նման լրջօրէն հայրենասէր եւ պատուական Հայեր եւ ուրիշներ աջակից են եղած իրեն՝ իր առաջին տարիներուն, բայց ո՛րքան բարեբախտութիւն մըն է նաեւ Կեսարացիներու համար, որ իրենց կերպասէն գործնական հասկացողութեան եւ փորձառութեան տէր անձ մը ունեցած են նոյն ատեն իրենց Առաջնորդ:

Այս զգացումները, զորս ունեցած էի վարժարանին բոլոր մասերը շրջած ատեն, յետոյ աւելի եւս ամրապնդուեցան իմ մէջս, երբ ներկայ եղայ աշակերտներու գրական մէկ երեկոյթին եւ՝ օր մը ամբողջ՝ իրենց դասերուն, ու մօտէն տեսայ թէ ուժեղ բազուկի մը սկսած կազմաւորութեան հիմը կայ հաստատութեան ներքին շէնքին մէջ ալ:

Ինչպէս անհատական կամ ընկերային կեանքի ամէն ձեւ, այնպէս նաեւ ամէն դպրոց ունի իր սեփական մթնոլորտը, իրեն յատուկ աւանդութիւններու եւ յիշատակներու անուշութեամբ մը, որով իրարու կը խառնուին գացած եւ ներկայ ուսանողական սերունդներու սիրտերը:

Պէտք է ապրած ըլլալ զուտ ազգային միջավայրի մը մէջ հաստատուած Բարձրագոյն Ազգային Ուսումնարանի մը դպրոցական կեանքը, հասկնալու համար թէ սրտագին եղբայրակցութեան ինչ սերտ կապ մը կը զօդէ հոն սրտերն իրարու, զուարթ՝ անկեղծ ու գաղափարական բարեկամութեան մը խորունկ սիրովը:

Ինծի այնպէս թուեցաւ թէ այդ տաքուկ մթնոլորտը, ազգային կեանքի զգացումով ոգեւորուած այդ շրջանակը կար Ս. Կարապետի վարժարանին մէջ ալ:

Գրական երեկոյթը, զոր աշակերտներն իրենք կը սարքեն ամիսը երկու անգամ, իր անկազմ հանդերձանքին մէջ, խօսքի ու երգի աշխուժութիւններովը, գաղափարի եւ սրատեսութեան թէեւ ցանցառ բայց ուժեղ փայլատակումներովը ազգային հասարակական կեանքի շուրջ եղած լուրջ կամ զուարթ ակնարկութիւններովն ու խորհրդածութիւններովը, կը մատնանշէր բան մը, որ ազգային հետաքրքրութեան ոգիին մէկ երեւոյթն է ինքնին, յատուկ մեր վարժարաններուն մթնոլորտին, եւ անծանօթ՝ օտար դպրոցներու կեանքին:

Այո՛, այս դպրոցն իր առտնին ու ներքին աւանդութիւններուն կեանքն ունէր. ու չէր կրնար այլապէս ըլլալ· քանի որ ուսուցիչներուն մէջ կային ոմանք որ հաստատութեան առաջին տարիէն ի վեր կը շարունակէին հոն իրենց պաշտօնավարութիւնը, եւ ուրիշներ, որոնք վարժարանին անդրանիկ կամ յաջորդ դասարաններու սաներէն էին, եւ այսպէս միութեան գիծեր կ'ըլլային ուսանողութեան հին եւ արդի սերունդներուն միջեւ:

Չկրցի ներկայ գտնուիլ անշուշտ ամէն կարգի բոլոր դասերուն, բայց ինչ որ տեսայ՝ կրցաւ ինծի թելադրել սա՛ կարծիքը թէ աշակերտներուն մէջ զօրաւոր է աւելի գիտական եւ գործնական ուսումներուն միտումը, եւ ատիկա խնդակցութեան պզտիկ պատճառ մը չէ անշուշտ:

Բայց ինչ որ առաւելագոյն խնդակցութիւն կը պատճառէ, ուսանողներուն ֆիզիքական եւ իմացական առողջ ու արթուն վիճակն է այն: Հարիւր քսան աշակերտներ, ամենամեծ մասը Կեսարիոյ թեմերէն, Եոզղատի, Կիւրինի եւ Կիլիկեան ուրիշ շրջաններէն, ամէնքն ալ բարեկիրթ եւ ուշիմ անձերու տպաւորութիւնը թողուցին իմ վրայ: Առողջութիւն, կարգապահութիւն եւ բարեկրթութիւն. այս երեքը երբ միասին կ'երեւին աշակերտներուն վրայ, կարելի է վստահ ըլլալ վարժարանի մը ներքին բարեկարգութեան եւ մտաւորական մակարդակին գոհացուցիչ ըլլալու մասին, վասնզի ատոնց միջոցաւ կը մշակուի աշակերտի մը ընդունակութիւնն եւ կը կանոնաւորուի աշխատութիւնը:

Մեր գրեթէ բոլոր վարժարանները, Օսմ. ազատութեան վերահռչակումէն յետոյ, քանի մը տարիներ շարունակ ենթարկուեցան ջղաձգական այնպիսի կացութեան մը, ուր աշակերտները, անդուլ անդադրում վազվռտուքի իրենց գիշերաջան տատանքին մէջ, չէին կրնար մտածել առողջութեան վրայ, ուր մտայնութիւնն այնպիսի դրութեան մը վերածուած էր որ անոնք կարգապահութիւնը կը շփոթէին ստրկամտութեան եւ բարեկրթութիւնը կեղծաւորութեան հետ. ասկէ՝ մտքի եւ սրտի ունպէտ վատնումի ուխտաւորեալ այս վիճակը, որուն պատճառած վէրքերը հազիւ թէ սկսած են սպիանալ հիմակ մեր կրթական կազմին վրայ:

Ս. Կարապետի վարժարանն ալ, ազատութեան յաջորդ տարին իսկ, վճարեց ներքին ու արտաքին ցնցումներու վնասին անխուսափելի իր բաժինը. բարեբախտաբար շուտով վերահաստատուեցաւ սակայն կարգ ու կանոնը՝ պ. Աբուլեանի փորձառու եւ հեռատես վարչութեան օրով մասնաւորապէս, ու իր յաջորդը պ. Թէքէեան, կրցաւ շարունակել կանոնաւորուած այդ կարգը, իր անձին հետ դպրոցին մէջ մտցնելով նոյն ատեն գրական ճաշակի նոր շունչ մը, որ այնուհետեւ աւելի պիտի զօրանայ անշուշտ պ. Մինասեանի տեսչութեան ատեն» (Ճամբու Վերյիշումներ, Սեբաստիայէն Էսկիշէհիր, ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, թ. 5504 և 5313))։

*Եւ այս պատուական հաստատութիւնը, իրապէս կը կառավարուէր Տրդատ եպ. Պալեանի շունչով ու ոգիով, իր մեկնումէն յետոյ ալ, ինչպէս շատ գեղեցիկ կերպով մը կը պատկերացնէ, Վահան Թէքէեան ըսելով թէ* «Առաջին վայրկեանին, Վանքի սեմէն ներս անցնելուդ պէս կը լսես արդէն, Տրդատ եպիսկոպոս Պալեանի անունը: Չորս տարիէ ի վեր ան մեկնած է, բայց ոչ միայն պատկառանքով՝ այլ եւ վախով դեռ կը խօսուի իր մասին: Իր շունչը ներկայ է այս անցքերուն մէջ, այս կամարներուն ներքեւ: Չկայ մէկը որ կա՛մ իր ձեռնասունը. կա՛մ իր աշակերտը, կա՛մ իր կուսակիցը եւ կամ իր հակառակորդը եղած չըլլայ: Հակառակորդներն ալ հիմա կ'ընդունին, սակայն որ զօրաւոր անհատականութիւն մըն էր անիկա եւ միայն անոր շնորհիւ կրցած է օգտակար ըլլալ Կեսարիոյ: Ամբողջովին իրն է, իր ձեռակերտն է վանքի վարժարանը, որ ամբողջ Փոքր Ասիոյ մէջ երկրորդական կրթութիւն տուող միակ Հայ վարժարանն եղած է» (Կեսարիա երթուղարձի եւ բնակութեան օրագիր մը, ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆ, *թ.* 811), *ինչպէս տեսնուեցաւ գրեթէ ոչինչէն «ի չգոյէ ի գոյ» ածուելով, այս եկեղեցականին կողմէ, որ զայն մատակարարած էր, չափազանց խղճամիտ*



*տեսութեամբ մը և բծախնդիր ճշգրտութեամբ հաշուետուութեամբ մը որ ներկայացուեցաւ քանի մը անգամներ*(1)։

*Այս ամէն կերպով պատուաբեր հիմնարկութիւնը, ինչպէս ամէն ինչ որ հայկական էր, զոհ գնաց հայաջինջ սարսափին, և քայքայուեցաւ ուրիշ այնքան գեղեցիկ գործերու հետ որ Հայը կերտած էր՝ թուրք բարբարոսութեան նախանձոտ աչքերուն տակ։*

*Տրդատ եպ. Պալեանի մեծ ձեռակերտին ո՛չ միայն շէնքը, այլ նաև անոր բարոյական կառուցուածքին գործաւորները՝ ուսուցիչները, և այդ կրթական անդաստանին ծիլերը՝ աշակերտները մեծագոյն մասամբ հնձուեցան և անէացաւ արդիւնքը այս մեծ հաստատութեան, որ իսկապէս հրաշալի գործ տեսած էր գաւառի հայութեան մէջ, այսպէս ապահովելով ազգին երախտագիտութիւնը իր անմոռանալի հիմնադիրին և իր գործակից ուսուցիչներուն, և զինքն քաջալերող նուիրատուներուն հանդէպ։*

*Այսօր՝ թէև միայն յիշատակի մը վերածուած, անիկա պարծանքի առարկան է Կեսարացիներուն, որոնք արդարև իրաւունք ունին հպարտութեամբ մատնանիշ ընելու այս հաստատութիւնը, որ Կեսարացի մը կերտեց, և Կեսարացիներ զարգացուցին, ոմանք նիւթապէս և ոմանք բարոյապէս։*

*Արդարև Տրդատ եպ. Պալեանի անձէն յետոյ որ հիմը դրաւ այս վարժարանին, այս հաստատութեան լծորդուած են անունները Կեսարացի բարեսէրներու, մասնաւորապէս Յովհաննէս և Մկրտիչ Խասեան եղբայրներու և Կիւլպէնկեաններու, և այն համեստ ուսուցիչներուն, որոնք առհասարակ ինքնաշխատութեամբ զարգացած առաջին նեցուկները եղան հիմնադիրին, այս մեծ գործը երևան հանելու համար։ Հոն իբր տնօրէն պաշտօնավարած են.*

1. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՆՇԱՆԵԱՆ (1888 – 1892)
2. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳՈՒՆՏՈՒՐԱՃԵԱՆ (1892 – 1894)
1բ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՆՇԱՆԵԱՆ (կրկին) (1894 – 1895)
3. ԵՐՈՒԱՆԴ ԵՐԿԱԹ (1895ին վեց ամիս)
1գ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՆՇԱՆԵԱՆ (Գ. անգամ) (1895 – 1908)
4. ՀՄԱՅԵԱԿ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ (1908 – 1911)
3. ԳԱՐԵԳԻՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ (1911 – 1912)
6. ԳԷՈՐԳ ԱԲՈՒԼԵԱՆ (1912 – 1913)

---

(1) *Տրդատ եպ. Պալեան,* 1903*ին իր վարժարանը յատուկ շէնքով մը օժտելէ յետոյ, իր մատակարարութեան* 17 *տարիներու հաշիւները, ամէն տարի առանձին ներկայացուցած ըլլալով հանդերձ, հաւաքաբար կրկին ներկայացուց Կ. Պոլսոյ Պատրիարքարանին, և հանրութիւնն ալ գիտակ պահելու համար, զայն հրատարակութեան տուաւ (տես* Բիւզանդիոն, *թ.* 2103, 2105, 2114, 2171, 2342, 2345, 2347, 2354, 2384, 2419-20, 2507, 2535. 2665, 2867, 2979, 3183 *և այլն), բացատրական տեղեկութիւններով։ Այս թիւերը՝ ներկայացնել աւելորդ համարեցի, վասնզի իր գործին բարոյական մասն էր որ կը շահագրգռէր ազգը քան անոր նիւթական մասը։ Տրդատ եպ. Պալեան Սահմանադրութեան հռչակումէն* (1908) *յետոյ ալ երկու անգամ իր մատակարարութեան շրջանի ամբողջական հաշիւները ներկայացուց և տրամադրեց Ազգ. մարմիններուն, ինչպէս ըսած եմ արդէն։*

7. ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ (1913 - 1914 վեց ամիս)
8. ՍԱՐԳԻՍ ՄԻՆԱՍԵԱՆ (1914)
9. ԳՐԻԳՈՐ ԱԼՋՐՃԵԱՆ (1914 - 1916)

*Իսկ իբր ուսուցիչ հոն պաշտօնավարած են Գարեգին Խաչատուրեան, Լեւոն Քէաթիպեան, Գրիգոր Սեթեան, Յովհաննէս Պայիկեան, Գէորգ Մկրտիչեան, Մարգար Գաբրիէլեան, Մերկերիոս Ագամեան, Ժան տ'Անժէ, Միհրան Խորթումճեան, Գարեգին Նահապետեան, Յովհաննէս Ասլանեան, Կարապետ Գունտաքճեան, Դանիէլ Նշանեան, Դանիէլ Պօյաճեան, Ներսէս Տ. Ստեփաննեան, Գալուստ Մօրճիկեան, Յարութիւն Ստեփաննեան, Գրիգոր Յ. Էօրէճեան, Արայ Մամիկոնեան, Տոք. Կարապետ Միսաքեան, Վահան Ասլան, Կարապետ Աբրահամեան, Գրիգոր Միսաքեան, Գուրգէն Թուրսարգիսեան, Գէորգ Թօփալեան, Պօղոս Գնդունի, Թադէոս Տէրտիրյարեան, Նիկողոս Փապուչճեան, Մարկոս Մարկոսեան, Գրիգոր Զագըրճեան, Սարգիս Արզումանեան, Ստեփան Խըտըրեան եայլ։*

*Այս աշխատաւորներուն արդիւնքին մասին գաղափար մը տալու համար, հոս կը ներկայացնեմ ցուցակը այս հաստատութենէն շրջանաւարտներուն, որ միայն աղօտ գաղափար մը կրնայ տալ, քանի որ շատ աւելի մեծ թուով թերաւարտներ կային, որոնք թուել կարելի չէ։*

## ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ԸՆԹԱՑԱՒԱՐՏՆԵՐԸ(*)

### Շրջան 1892 - 1893

*Վարժարանը կու տայ իր առաջին շրջանաւարտները, հինգը Գէորգ Էսաեան սան և մէկ թոշակաւոր*

*Վահան Կարապետ Ս. Քիւրքճեան, Նիրզէցի*
*Հմայեակ Մելքոն Ա. Ուզուրլեան, Էվէրէկցի*
*Գարեգին Մարտիրոս Նահապետեան,* »
*Ներսէս Զաքարիա Տ. Ստեփաննեան, Նիրզէցի*
*Խորէն Կարապետ Մ. Քէօլէեան, Թալասցի*
*Միհրան Յ. Ենովքեան*(1)

### Շրջան 1893 - 1894

*Բարսեղ Գ. Թէրզեան, Կեսարացի*(2)
*Իսրայէլ Խ. Արսլանեան, Մունճուսունցի*(3)

---

(*) *Հմայեակ Ուզուրլեան և Կարապետ Աբրահամեան* 1928*ի Ազգ. Հիւանդանոցի Տարեցոյցին մէջ* (*էջ* 221–262) *ունին ուսումնասիրութիւն մը* «Կեսարիոյ Ս. Կարապետ վանքը, բարձրագոյն վարժարանը եւ Տրդատ եպ. Պալեան» *խորագրով ուր հրատարակած են ընթացաւարտներու ցուցակ մը* (*էջ* 254–259) *որմէ օգտուած եմ։ Սակայն հարկ կը դատեմ դիտել տալ թէ յիշողութեամբ վերակազմուած ըլլալով սխալներ սպրդած են։ Տրդատ եպ. Պալեանի հաշիւներուն կցուած բացատրութիւններէն և լրագրական հրատարակութիւններով տրուած տեղեկութիւններէն օգտուելով, կարելի եղածին չափ ճշդած եմ։*

(1) *Բոլոր իր ընկերները ուսուցիչ եղած են իբր Գէորգ Էսաեան սան, բացի իրմէն որ թոշակաւոր էր։ Ենովքեան* 1899*ին հաստատուած էր Էնկիւրիւ:*

(2) *Յետոյ Ամերիկա գաղթած։*

(3) *Այժմ՝ ի Պոլիս Այրէս, հարտարապետ։*





Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ 1900 ՏԱՐՈՒԱՆ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ ԵՒ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐ

1. ԴԱՆԻԷԼ ՆՇԱՆԵԱՆ, 2. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՆՇԱՆԵԱՆ, 3. ՍՄԲԱՏ ՎՐԴ. ՍԱԼՊԱՇԵԱՆ, 4. ԴԱՆԻԷԼ ՎՐԴ. ԲԱՑՈՒՄԵԱՆ, 5. ՏՐԴԱՏ ՎՐԴ. ՁԱՐԴԱՐԵԱՆ, 6. ՄԻՀՐԱՆ ԳՈՒՆՏԱՔՃԵԱՆ (ԱՆԳԼԵՐԷՆԻ ՈՒՍՈՒՑԻՉ), 7. ՄԿՐՏԻՉ ԻՆԱՅԷԹԵԱՆ, 8. ՍՏԵՓԱՆ ԽՅԸՐԵԱՆ, 9. ՆԵՐՍԷՍ ԶԱՔԱՐԵԱՆ, 10. ՍՈՒՐԷՆ ՆՇԱՆԵԱՆ, ՎԵՐՋԻՆ ԿԱՐԳԻՆ ՎՐԱՅ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ:

Միսաք Յ. Լաչինեան, Կեսարացի(1)
Արտաշէս Պ. Վարպետեան, Պալակէսցի(2)
Յարութիւն Ջիլինկիրեան (Մըզմըզեան), Թավլուսունցի(3)
Միհրան Կ. Ասլանեան, Մանճըլընցի(3)
Յակոբ Գ. Փէմպէճեան, Էֆքէրէցի(3)

### Շրջան 1894 - 1895(*)

Գասպար Պ. Գասպարեան, Թալասցի(4)
Լեւոն Գ. Մալխասեան (բժիշկ), Կեսարացի
Սմբատ Օհան Կ. Օհանեան, Կեսարացի(5)
Մկրտիչ Յ. Քէհեաեան, Կեսարացի(6)
Արամ Ա. Սաղըրեան, Կեսարացի(7)
Հայկ Ճամուղեան, Կեսարացի(8)
Վահան Յ. Օհանեան, Կեսարացի(9)

### Շրջան 1895 - 1896(**)

Կարապետ Տ. Բ. Էլիպէօյիւքեան (բժիշկ), Կեսարացի
Միքայէլ Յ. Եէմէնիճեան, Կեսարացի(10)
Կարապետ Վ. Պէրպէրեան, Պիւնեանը Համիտցի(11)
Մկրտիչ Տ. Ինայէթեան, Կէրմիրցի(12)
Սարգիս Յ. Արզումանեան, Կէմէրէկցի(12)
Սարգիս Ն. Թօշիկեան, Կեսարացի(12)
Կարապետ Ս. Սեղբոսեան, Թալասցի(13)
Յակոբ Թապիպեան, Կէրմիրցի(14)
Սիրական Ն. Խուպէսէրեան, Թալասցի(15)
Աբէլ Բ. Կիւլպէնկեան (բժիշկ), Թալասցի
Յարութիւն Մ. Գըզաբրահամեան, Քիւչիւքէօյցի(16)

---

(1) Հիմա Գահիրէ։
(2) Յետոյ առեւտրական ի Սամսոն։
(3) Երեքն ալ ուսուցիչ։
(*) Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան աւելի ունին այս շրջանին համար Կ. Օհանեան, Յովհաննէս Գույումճեան, Տիգրան Կ. Ղազէրեան, Պետրոս Կնքապապեան, Տիգրան Մանուկեան։
(4) Յետոյ առեւտրական։
(5) Յետոյ վկայեալ մեքենագէտ ի Ֆրանսա։
(6) Առեւտրական։
(7) Վաղամեռիկ։
(8) Առեւտրական ի Կ. Պոլիս։
(9) Առեւտրական ի Կեսարիա
(**) Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան աւելի ունին Յակոբ Եսայեան (ուսուցիչ) և պակաս՝ Սարգիս Թօշիկեան և Յարութիւն Գըզաբրահամեան։
(10) Այժմ Ամերիկա։
(11) Առեւտրական իր ծննդավայրը։
(12) Ուսուցիչ
(13) Առեւտրական Ատանայի մէջ։
(14) Վաղամեռիկ։
(15) Առեւտրական Իզմիր։
(16) Յետոյ Էնկիւրիւ առեւտրական։



### Շրջան 1899 - 1900

Մամաս Յ. Զարդարեան Ֆէնէսէցի (յետոյ Տրդատ վրդ.)
Կարապետ Գ. Միասերեան (բժիշկ) Էֆքէրէցի

### Շրջան 1900 - 1901(*)

Մկրտիչեան Քէչեան (բժիշկ), Կէրմիրցի
Ստեփան Բ. Թապիպեան (բժիշկ), Կէրմիրցի
Սուրէն Յ. Նշանեան, (բժիշկ) Կէրմիրցի




**Ս. ԿԱՐԱՊԵՏԻ 1901Ի ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ**

1. ՄԿՐՏԻՉ Ն. ՔԷՉԵԱՆ, 2. ԵՐՈՒԱՆԴ Յ. ԳԱԶԱԶԵԱՆ, 3. ՀԱՅԿ Ս. ՍԵՂԲՈՍԵԱՆ, 4. ՍՈՒՐԷՆ Յ. ՆՇԱՆԵԱՆ, 5. ՍՏԵՓԱՆ Բ. ԹԱՊԻՊԵԱՆ 6. ԿԱՐԱՊԵՏ Տ. Յ. ՄԸՍԸՐԼԵԱՆ:

---

(*) Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան չորս վերջինները չունին։

Հայկ Ս. Սեղբոսեան, Թալասցի(1)
Կարապետ Մարլեան, Թալասցի(2)
Երուանդ Յ. Գազազեան, Կեսարացի(3)
Սարգիս Կ. Հինդլեան, Թալասցի(4)
Սահակ Մ. Մալխասեան, Թալասցի(5)
Նազարէթ Պ. Պէյլէրեան, Կեսարացի(6)
Խաչատուր Կ. Լօրտիկեան, Կեսարացի(7)

**Շրջան 1901 – 1902(*)**

Նազարէթ Պետրոս Մ. Խաչիկեան (կամ Պէյլէրեան), Կեսարացի(8)
Ստեփան Գ. Հինդլեան, Թալասցի
Սինան Կ. Սինանեան, Էֆքէրէցի
Կարապետ Մ. Հաճընլեան, Կեսարացի
Յակոբ Ս. Հաճընլեան, Թալասցի

**Շրջան 1902 – 1903(**)**

Գրիգոր Յ. Ճօրէճեան, Հաճընցի (9)
Նշանիկ Ջէլվէեան, Մերսինցի(10)
Սահակ Մ. Մալխասեան, Թալասցի(11)
Սարգիս Պ. Պօղոսեան (Պըտըլիկեան), Կեսարացի(12)
Խաչատուր Կ. Լօրտիկեան, Կեսարացի(13)

---

(1) Նախ ուսուցիչ և ապա Ատանայի մէջ առեւտրական։
(2) Վաղամեռիկ ծաղիկ հասակին մէջ։
(3) Յետոյ առեւտրական Աղեքսանդրիոյ մէջ։
(4) 1902էն վերջ Թալասի մէջ ուսուցիչ։
(5) Յետոյ առեւտրական Ագսարայի մէջ։
(6) Ուսուցիչ։
(7) Յետոյ առեւտրական Կեսարիա։

(*) Տես Բիւզանդիոն, թ. 1778. Տրդատ եպ. կը թուէ 10 շրջանաւարտ՝ երկու բաժանումներով։ Առաջին հինգէն զատ որոնք ստացած են գրական և գիտական բարձրագոյն վկայական, կը յիշուին հետեւեալ հինգը որ ստացած են Բ. կարգի վկայական. Կարապետ Ս. Պագալեան (Սեբաստացի), Եղիա Ս. Սիվազլեան (Կեսարացի), Ստեփան Դ. Կիրակոսեան (Կեսարացի), Նազարէթ Ա. Ա. Արսլանեան (Պրուն Դըշլացի), Կարապետ Յ. Քեհեաեան (Կեսարացի)։ Ուղուրլեան և Աբրահամեան միայն չորս շրջանաւարտ կը յիշեն։

(8) Յետոյ ուսուցիչ Կեսարիոյ Կիւմիւշեան վարժարանին մէջ։

(**) Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան այդ տարին շրջանաւարտ ցոյց կու տան նաև Արմենակ Տ. Սահակեան, Մկրտիչ Ն. Փամուքեան, Սարգիս Կ. Նարլեան, Ստեփան Կ. Կիրակոսեան և չեն յիշեր Գրիգոր Յ. Ճօրէճեանը և Սեռովբէ Յ. Եըլանճեանը (որոնք յաջորդ տարուան յետաձգուած են), Գրիգոր Տէր Աբրահամեանը, Վարդավառ Յ. Ճըզըլեանը, Խաչատուր Յ. Մինօեանը։

(9) Ուսուցիչ։
(10) Յետոյ առեւտրական ի Մերսին։
(11) Տես 1900-1ի շրջանաւարտներուն մէջ։
(12) Ուսուցիչ, այժմ Բարիզ։
(13) Տես 1900–1ի շրջանաւարտներուն մէջ։



Յարութիւն Կ. Գասարճեան, Կեսարացի(1)
Կարապետ Գ. Թաշճեան, Կեսարացի(2)
Գէորգ Յ. Մնտիկեան, Կեսարացի(3)
Գրիգոր Տէր Աբրահամեան, Կիւրինցի(4)
Վարդավառ Յ. Ճըզըլեան, Կիւրինցի(4)




**Ս. ԿԱՐԱՊԵՏԻ 1904Ի ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ**

1. ՀԱՅԿ ՍԵՂԲՈՍԵԱՆ, 2. ԱՐՄԵՆԱԿ ՔԷՀԵԱԵԱՆ, 3. ԱՐՄԵՆԱԿ ԽԱԽԱՄԵԱՆ, 4. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՕՂՈՍԵԱՆ (ՊՏԸԼԻԿԵԱՆ), 5. ՆՇԱՆ ՄԿՐԵԱՆ, 6. ՎԱՀԱՆ ԲՈԼԱՏԵԱՆ։

---

(1) Յետոյ առեւտրական ի Ռումանիա։
(2) Ուսուցիչ Կեսարիոյ Ս. Սարգիս եկեղեցւոյ վարժարանը (1907)։
(3) Սեղանաւոր Կեսարիա։
(4) Դարձած Կիւրին։

Խաչատուր Յ. Մինօեան, Տէրէնտէցի(1)
Սերովբէ Յ. Նըլանճեան, Կիւրինցի(2)

## Շրջան 1903 – 1904(*)

Արմենակ Խախամեան (բժիշկ)
Յովհաննէս Պ. Պօղոսեան
Արմենակ Յ. Քեահեաեան
Նշան Յ. Մկրեան
Վահան Յ. Փօլատեան
Գրիգոր Ն. Բամպուքեան
Եղիա Ս. Սըվազլեան

## Շրջան 1904 – 1905

Վահան Պ. Իսպէչէրճեան
Սեդրաք Յարգուարթեան
Յարութիւն Ապաճեան
Կարապետ Խաչիկեան
Մկրտիչ Դաւթեան

## Շրջան 1905 – 1906

Կարապետ Թ. Աբրահամեան
Արամ Մ. Սահակեան
Կարապետ Գօյունճեան
Հմայեակ Գարակէօզեան
Մկրտիչ Հ. Ջիլճեան
Խորէն Աւագեան
Սարգիս Պասմաճեան
Յարութիւն Տ. Տատըրեան
Համբարձում Տէլիպաշեան

## Շրջան 1906 – 1907

Գուրգէն Յ. Թուրսարգիսեան Հաճընցի
Յարութիւն Եայլաեան.

## Շրջան 1907 – 1908

Վաղարշակ Բազումեան Թալասցի
Կարապետ Թուխտարեան
Երուանդ Եսայեան Էնկիւրցի
Արամ Յ. Քէհեաեան
Սարգիս Թէրզեան Էֆքէրէցի (Գըրշէհիրցի)
Արամ Տատուրեան
Մանուէլ Մարտիրոսեան Հալէպցի
Լեւոն Տէր Յակոբ Այվազեան
Բարսեղ Տէր Հմայեակ Բարսեղեան
Սիսակ Պ. Պալեան

---

(1) Տէրէնտէ գացած։
(2) Ուսուցիչ Կէրմիրի վարժարանին։
(*) Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան, ունին երկուք աւելի (Նըլանճեան և Էօրէճեան) որոնք մէկ տարի առաջ աւարտած են դպրոցին շրջանը, իսկ լուսանկարին վրայ կը պակսին Գրիգոր Բամպուքեան և Եղիա Սըվազլեան։



Պետրոս Դանիէլեան Էնկիւրցի
Յարութիւն Բէյլիսեան Կասմացի
Կարապետ Գօյունճեան Սամսոնցի

## Շրջան 1908 – 1909 (*)

Գէորգ Հովիւեան
Լութֆիկ Եաղըճեան
Սերովբէ Սահակեան
Յովհաննէս Յարութիւնեան

## Շրջան 1909 – 1910 (**)

Արամ Գարամանեան
Բարսեղ Մինասեան
Երուանդ Եսայեան
Եսայի Քեհեաեան
Կարպիս Սէլեան
Յարութիւն Քէչիչեան
Յովակիմ Օվայեան.

## Շրջան 1910 – 1911

Հմայեակ Յակոբեան
Հրանտ Ք. Նշանեան
Կարապետ և Գէորգ Աւագեան եղբայրներ
Ղազարոս Հինդլեան
Տիրան Թէրզեան
Արմենակ Տատըրեան
Լեւոն Այվազեան

---

(*) Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան աւելի ունին Յովակիմ Օվայեանը որ 1910ին վկայուած է։
(**) Բիւզանդիոն, թ. 4181ի մէջ հրատարակուած ցուցակը հիմ բռնեցի, իբր օրը օրին տրուած վաւերական տեղեկութիւն։ Հ. Ուզունըլեան և Կ. Աբրահամեան միայն այս ցանկէն ունին Երուանդ Եսայեանը և հետեւեալ բոլորովին անծանօթ անունները։
Արտաշէս Զարըգլեան
Գէորգ Գօբուլեան
Ջաքէոս Այվատեան
Գրիգոր Զագըճեան
Լութֆիկ Զագմագճեան
Դանիէլ Տէվլէթեան
Յովհաննէս Տումանեան
Յակոբ Խտըրեան
Գրիգոր Գօլթուքեան
Կարապետ Ջննոզեան
Սարգիս Ճազմատարեան
Ասուր Գապագեան
Բարսեղ Խանլեան Թալասցի
Յովհաննէս Թէլլեան
Արամ Ուզունպօղոսեան

**Տրջան 1911 - 1912**

Բիւզանդ Յ. Ալլահվէրտեան
Մնակ Չէրքէզեան
Թաթուլ Ինճալեան
Յակոբ Յ. Նշանեան

**Տրջան 1912 - 1913**

Օննիկ Գ. Միսաքեան
Մանուկ Ս. Աւետեան
Եսայի Ստեփանեան
Նազարէթ Յ. Սալպաշեան

**Տրջան 1913 - 1914**

Անդրանիկ Դ. Նշանեան
Առաքել Յ. Կիւրիւնլեան
Աբգար Յ. Մանուկեան
Գէորգ Թէքէեան
Գէորգ Վ. Պէրպէրեան
Դաւիթ Թաճիրեան
Մաժակ Տօքթ. Յակոբ պէյ Տատրեան
Լեւոն Նշանեան
Կարապետ
Գառնիկ Ծրճրեան
Պօղոս Պօղոսեան
Յովհաննէս Թորոսեան
Կարապետ Գնաճեան
Հայկ Պալըգճեան
Յարութիւն Հալէպլեան
Յարութիւն Մէլէկեան
Ռէթէոս Տէր Ներսէսեան
Ռուբէն Տէր Յակոբեան
Սիմոն Լ. Թէքիրեան
Սարգիս Եարտըմեան
Օննիկ Բ. Թապիպեան.

**Տրջան 1914 - 1915**

Աբրահամ Արապեան
Արմենակ Մէլէկեան
Եղիա Մէլէկեան
Արամ Գարլանեան
Եղիա Պօտիկեան
Լեւոն Տէտէեան
Խաչիկ Օգնաեան
Կարապետ Գալայճեան
Մանուկ Նշանեան
Մակար Թիւթիւնճեան
Միրիճան Սիմաւոնեան
Յակոբ Զէրկէրեան
Յակոբ Դանիէլեան
Սիրական Մ. Տուխթէրեան



Սարգիս Թաթուլեան
Սմբատ Դարբինեան
Սարգիս Շիմիտեան
Ստեփան Պահատրեան
Վրթանէս Սերոբեան

## Ը.

## ԿԵՍԱՐԻՈՅ ՎԻՃԱԿԻՆ ԿՐԹԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

Կեսարիոյ Առաջնորդական վիճակը որքան որ ալ միութիւն մը կը կազմէր Արգէոսի շուրջը, սակայն իր մէջ կը պարունակէր բաժանման գիծեր, որոնք ամբողջ վիճակը կ'ստորաբաժնէին երեք որոշ շրջանակներու, —Այսր-Արգեղոսեան, Անդր-Արգեղոսեան, Կէօսթէրէի— որոնք իրենց մէջ կը կազմէին առանձին միութիւններ, իրենց աշխարհագրական դիրքին և իրենց պարունակած Հայ բնակչութեան ծագման և բարուց ու սովորութեանց բերմամբ։

Անոնք իրարու հետ ունենալով հանդերձ նմանութիւններ և իրենց աշխարհագրական դիրքի մերձաւորութեան բերմամբ՝ մեծ առնչութիւններ, կարծես թէ պահած են իրենց մասնաւորութիւնները, և ինչպէս ամէն մարզի նաև կրթականին մէջ, հետեւելով հանդերձ քաղաքին շարժումներուն, իրենց սեփական ձգտումները ունեցած են։ Երբեք մէկուսի չմնալով ընդհանուր ազգ. կրթական շարժումէն՝ որուն ազդեցութեան տակ կը գտնուէր նաև Կեսարիա, վիճակներն ալ ունեցած են իրենց կրթական հաստատութիւնները, որոնք հետզհետէ բազմացած են։ Այնպէս որ Ընդհ. Պատերազմէն առաջ, ինչպէս տեսնուեցաւ, վիճակին ամենայետին գիւղին մէջ իսկ կրթական յարկ մը կար, ուր գէթ կարդալ-գրել կը սորվէին գիւղին տղաքները։

Ինչպէս այդ գիւղերը յաճախ ածանցումներն էին մէկ մէկ մեծ աւանի, նոյնպէս նաև այդ գիւղական վարժարանները, կեդրոնական աւանին մեծ դպրոցին ճիւղերն էին, յաճախ հոն պատրաստուած աշակերտներէն առնուած ուսուցիչներով։ Կեսարիոյ վիճակին երեք շրջանակները այսպէս կազմած էին կրթական հաստատութեանց ցանց մը որոնց կեդրոնները Այսր-Արգէոսեան շրջանակին համար՝ կը կազմէր Կեսարիա քաղաքը կամ Կէրմիր աւանը, Անդր-Արգէոսեան շրջանին համար՝ Էվէրէկ-Ֆէնէսէի գիւղ-աւանը, և Կէօստէրէի գաւառակին համար՝ Թոմարզան, որոնք իբր այդ երեք շրջաններուն կեդրոնները՝ առաջին լուսաւորութեան կայանները եղած են, իրենց մերձաւոր շրջանակին համար։

1. ԱՅՍՐ-ԱՐԳԵՂՈՍԵԱՆ ՇՐՋԱՆԱԿ.—Կեսարիոյ քաղաքին ամիջական դրացի այս շրջանակին մէջ գրեթէ քաղաքին շարժման զուգընթաց կը կազմակերպուին նախակրթարաններ, մասնաւորապէս մեծ աւաններու մէջ։

1820ական թուականներուն արդէն մի քանի աւաններ ծխական կամ ազգային վարժարաններու նմոյշին վրայ կ'ունենային իրենց վարժարանները, աւելի կամ նուազ տեւական կերպով։

Շատ հաւանական է մտածել թէ Թալաս գիւղը, իբր անմիջական դրացին Կեսարիոյ գրեթէ անոր հետ ունեցած է իր դպրոցը, որուն

յիշատակութեան կը հանդիպինք 1834ին և 1845ին կազմուած գաւառական վարժարաններու վիճակագրութեանց մէջ քաղաքին երկու վարժարաններուն հետ։

Նոյնպէս Էֆքերէի մէջ 1820ական թուականներուն սկիզբները, Տոքթ. Ռուսինեանի հօրը Գավզանդի նախաձեռնութեամբ վարժարան մը հիմնուած էր (տես վերը էջ 782) որ չէր կրցած երկար ապրիլ, անոր համար է որ անոր յիշատակութեան չենք հանդիպիր 1834ի և 1845ի վիճակագրութեանց մէջ։

Իսկ Կէրմիր՝ որ նոյնպէս այնքան մօտ էր քաղաքին 1823ին կը հիմնէր իր ազգային վարժարանը՝ եկեղեցիին քովիկը(1)։

Այս վարժարաններուն մէջ աւելորդ է ըսել թէ տրուած ուսումը բնաւ տարբերութիւն չունէր Կեսարիոյ թաղային վարժարաններուն մէջ այն օրերուն տրուած ուսումէն, որուն ընթացքը կը կազմէր քերականին, հեգերէնին, Սաղմոսին, Ժամագիրքին և Նարեկին ընթերցումը, քիչ մը գրավարժութեան և թուաբանական ծանօթութիւններու հետ։

Թերևս Թալասի և Կէրմիրի օրինակին վրայ ուրիշ մի քանի գիւղերու մէջ ալ քահանայի մը կամ եկեղեցւոյ լուսարարին կամ վերջապէս ուսուցիչի պաշտօն վարելու յարմար ուէ անձի մը շուրջը, եկեղեցիներու շէնքին մէջ, կամ անոր քով, կամ բոլորովին հեռուն քահանային տունին կամ լուսարարին խրճիթին մէջ կարդալ սորվեցնելու համար փոքրիկներու, պզտիկ խումբեր հաւաքուած են և այսպէս դպրոցներու սկզբնաւորութիւնը կամ սաղմնաւորութիւնը տեսնուած է, սակայն դժբախտաբար ասոնք շատ հեռու էին կրթական վերածննդեան մը ազդանշանները ըլլալէ։

Կ. Պոլսոյ մէջ մասնաւորապէս 1830ական թուականներէն յետոյ կրթական հաստատութեանց շուրջ տեսնուած եռուզեռը, ներշնչուած պետական օրինակէն, անարձագանգ չմնաց ինչպէս Կեսարիոյ քաղաքին նոյնպէս նաև շրջակայից մէջ։

Կիւլպէնկեանք, Թալասի ամենէն նշանաւոր ընտանիքը, անշուշտ իրենց յարաբերութիւններով և շփումներովը ազդուած և գիտակցած այն պէտքին և կարևորութեան որ ուսումը ու դաստիարակութիւնը կ'ընձեռնէին, և մասնաւորապէս ներշնչուած այն օրինակէն որ կու տային այն թուականներուն Կ. Պոլսեցիք կառուցանելով թաղային բազմաթիւ վարժարաններ և կազմելով անոնց նպաստամատոյց ընկերութիւններ, նախաձեռնարկ կ'ըլլան Թալասի մէջ կրթական գործին մղում տալու, իրենց նուիրատուութեամբ կառուցանելով դպրոցի մը շէնքը 1848ին (տես վերը էջ 736-7)։ Այս վարժարանին ի նպաստ կը կազմուի նաև Կ. Պոլսոյ մէջ նոյն տարին իսկ, Թալասցի պանդուխտ ազգայիններու մասնակցութեամբ Մամիկոնեան ընկերութիւնը որ 1848էն 1876-77 վարժարանին բերաւ կարևոր օժան-

(1) 1834ի և 1845ի վիճակագրութեանց մէջ Կէրմիրը նշանակուած չըլլալը պէտք չէ զարմանք պատճառէ, վասնզի Կէրմիր իբր վիճակ Ս. Դանիէլի, մաս կը կազմէր Կիլիկիոյ կաթողիկոսական աթոռին, որուն թեմերուն վիճակագիրը դուրս կը մնար Պատրիարքարանի կազմած ցուցակէն։



դակութիւն մը, մինչև որ Օսմ. կայսրութեան սնանկութեան պատճառով իր գրամագլուխը փճացաւ։

Թալաս, դարձեալ շնորհիւ Կիւլպէնկեաններու, կ'ունենայ իր աղջիկներու վարժարանը։ Աւանդմէ Տիկին Մայրամ, մայրը՝ Սարգիս և Սերովբէ Կիւլպէնկեան բարերար հարազատներու, 1860ին, կը կառուցանէ աղջիկներու համար վարժարան մը, երբ դեռ Կեսարիա քաղաքը հազիւ անդրադարձած էր անոր պէտքին և շատ նախնական ձևով աղջիկներու յատուկ վարժարանի մը հիմը դրած էր։

Թալասցիք՝ այսպէս բարեբախտ եղած են շնորհիւ Կիւլպէնկեաններու, կրթական մարզի մէջ առաջին կարգին վրայ գալու և գրեթէ քայլ առ քայլ հետևելու քաղաքին շարժման, միշտ ունենալով հովանաւոր պաշտպանութիւնը իրենց Վարդ-Պատրիկեան վարժարանին վրայ՝ Կիւլպէնկեան պատուական ընտանիքին որ ամէն զոհողութիւն ըրած է իր ձեռակերտ հաստատութեան համար, երկար տարիներ։

Թալասի Վերի թաղի մէջ ցոյց տրուած այս ոգևորութիւնը՝ մրցութեան առիթ եղած է և Մամիկոնեան ընկերութեան կազմութենէն (1848) երկու տարի յետոյ 1850ին Վարի թաղին պանդուխտները կազմած են Արշակունեան ընկերութիւնը, իրենց թաղին մէջ համանուն վարժարան մը բանալու համար, որ յետոյ Թալասցի ուրիշ հարուստի մը Խուպէսէրեանի բարերարութեամբ վերաշինուած է։ Կ. Պոլիս հաստատուած Կեսարիոյ քաղաքացի և շրջակայ գիւղերու պանդուխտ ազգայնոց այս օրինակը վարակիչ հանգամանք մը ունեցաւ և ինչպէս արդէն ըսի (էջ 792) Մունճուսունցի Եազըճը Պօղոս Օտեան, Ըրվանը պաշը Յովհաննէս Այվատեան և Րէսիմճի Մկրտիչ աղաները ձեռնտու եղան 1849-1850ին իրենց ծննդավայրին մէջ հաստատելու վարժարան մը։

Շատ հաւանական է ենթադրել թէ ուրիշ գիւղերու մէջ ալ բացուած են, իրենց Կ. Պոլիս գտնուած պանդուխտներուն օժանդակութեամբ, դպրոցներ որոնք իրենց ծրագիրով և նախնական վիճակով անկարելի էր որ կրթական յեղաշրջման մը ռահվիրան հանդիսանային, վասնզի շատ համեստ դպրոցներ էին, հազիւ իրենց անցուկ շրջանակին մէջ օգտակար ըլլալու կոչուած, և հեռու կրթական շարժում առաջացնելու և կրթական դրութիւնը յեղաշրջելու ոյժէն և կարողութենէն։

Սակայն այս գիւղական վարժարաններու մէջ գտնուեցաւ մէկը, Կէրմիրի Պարթևեան վարժարանը, որ 1862ին իր ստացած անսովոր փայլով, իսկապէս կատարեց մեծ յեղաշրջում մը Կեսարիոյ և շրջակայից կրթական գործին մէջ, իր հասուցած աշակերտներով։ Կէրմիր՝ այն պատճառներով որոնք արդէն ներկայացուեցան (տես վերը էջ 1101-2) առաջին վայրը եղաւ Արգէոսի շրջանին մէջ որ կրցաւ արդիական դպրոց մը կազմակերպել։ Մինչև 1862, Կէրմիրի մէջ կրթական գործը տարբերութիւն չունէր շրջակայ վայրերու վիճակէն։ Հոն ալ քանի մը խալֆաներ ըստ հնօրեայ վարժապետական դրութեան և դպրութեան՝ Սաղմոս, Ժամագիրք ու Նարեկ ուսուցանելով՝ իբր դարուն գիտութիւնը, կը բաւականային։

Այս հնօրեայ խալֆաներու վերջին տիպարներն էին Կէրմիրի մէջ Պաղչէեան Աբրահամ վարժապետ և Սարգիս վարժապետ, որոնք

1862էն յետոյ ալ ծառայեցին Պարթեւեան վարժարանին մէջ, իբր Ծաղկոցի բաժինին ուսուցիչներ։

Կէրմիրցիք՝ իբր վաճառական մարդիկ, իբր աշխարհ ճանչցող, բանգէտ ու շատ բան տեսած մարդիկ, շուտով թօթափեցին կրթական այս ողբալի վիճակը, իրենց վարժարանը բոլորովին կերպարանափոխ ընելով և ժամանակին յառաջդիմութեան համաձայն վիճակի մը մէջ դնելով։

Մասնաւորապէս մի քանի հեռատես ու ուսումնասէր Կէրմիրցի առեւտրականներ, ինչպէս Սահակեան չորս եղբայրները՝ Մ. Յովհաննէս, Սերովբէ, Կարապետ և Մ. Յարութիւն (որոնցմէ ամէնէն կրթասէրը և խանդավառն էր Սերովբէ), Մանուէլ Մանուէլեան, Յովհաննէս Պօյաճեան, Խաչատուր Դաւիթեան և Ստեփան Իպիչեան եւայլք, որոնք ամէնէն առաջ ըմբռնած ըլլալ կը թուին ժամանակին պահանջները, նախաձեռնարկ կ'ըլլան ամէնէն առաջ իրենց ծննդավայրը օժտելու վարժարանի յատուկ գեղեցիկ ու ընդարձակ շէնքով մը, և ապա հոգածու կ'ըլլան վարժարանին կրթական մակարդակը բարձրացնելու, ժամանակին պէտքերուն համապատասխան ուսում տալու, և հնօրեայ վիճակէն հանելու։

Անոնք մէկ անգամէն կը բանան թէ՛ մանչերու և թէ աղջիկներու վարժարաններ, մինչև այն ատեն իբր ուսմանց նիւթ ընդունուածէն տարբեր ծրագիրով մը, վասնզի հոն կը դասախօսուէր, պարզ ընթերցումէն զատ քերականութիւն, գրաբարէ թարգմանութիւն, ճարտասանութիւն, շարադրութիւն, Հայոց պատմութիւն, թուաբանութիւն (չորս գործողութիւն), ինչպէս նաև թուրքերէն (հասարակ ընթերցանութիւն) և վերջապէս քրիստոնէական վարդապետութիւն, որոնք բացի թուրքերէնէն, կը դասախօսէր Պատուելի Ստեփան Երլանճեան կամ Տ. Յովհաննէսեան, որ հաւանօրէն ինքնաշխատութեամբ հմտութիւն ձեռք բերած անձ մըն էր։

Իսկ թուրքերէնը կը դասախօսէր Կարապետ Վահան (Տ. Բարսեղեան)։

Իսկ աղջիկներու բաժինին ուսուցիչն էր Նազարէթ Երլանճեան (յետոյ Տ. Յակոբ քհ.)։

Վարժարանին նիւթական մատակարարութեան սատարելու համար այս առեւտրականները, որոնք այս հիմնական փոփոխութիւնները մտցուցած էին հոն, կազմեցին Պարթեւեան անուն ընկերութիւնը որուն անդամակցեցան գրեթէ բոլոր հարուստ և միջնակարգեայ Կէրմիրցիք՝ տարուած կրթութեան սիրով և եռանդով։ Իրենց վճարած անդամավճարներով և հարսնիքներէն գոյացած հանդերձագինով, կը հոգացուէր վարժարանին ծախքը, որուն անմիջական հսկողութեան համար ալ մարմին մը կազմուած էր, իբր հոգաբարձութիւն։

Այս կերպով Կէրմիրցիք թեմօրէից մէջ առաջինը կ'ըլլային որ իրենց դպրոցը կ'արդիականացնէին։

Հետեւաբար այս թուականը կրնայ նկատուիլ Կեսարիոյ վիճակին մտաւոր և կրթական կեանքին մէջ նշանաւոր հանգրուան մը, վասնզի այդ թուականէն սկսեալ Կեսարիոյ և շրջակայից կրթական-դպրոցական գործը կ'ենթարկուէր յեղաշրջումի մը, հին Տէր Թոդիկեան դրութեամբ դասախօսող խալֆաներու տեղ՝ —որոնց հմտութեան վերջին սահմանը Նարեկին ընթերցումն էր— աւելի բարձր աստիճանի



և աւելի ընդարձակ ծանօթութեան տէր ուսուցիչ մը՝ ինչպէս էր Ստեփան պատուելին, իբր դասախօս ունենալով։

Այս շրջանը իսկապէս փոխանձման շրջան մըն էր դպրոցավարութեան տեսակէտով, վասնզի եթէ դպրոցին ուսումնական ծրագիրը կը փոխուէր, տակաւին կը պահուէին դաստիարակութեան հին մեթոտները, քանի որ բացարձակ կը տիրապետէր ֆալախանը «Նոյն ժամանակի աշակերտութեան անոպայ վարքը զգաստացնելու համար» ինչպէս ըսած է նոյնիսկ Ստեփան պատուելիի աշակերտներէն մին, կերպով մը արդարացնելու համար այս նշանաւոր պատուելիին գործադրած բարբարոսական զգաստացուցիչ միջոցները որոնց զոհերէն մէկուն (Տիար Հայկ Ինայէթեանի) պատմութիւնը արդէն մէջ բերած եմ վերը (տես էջ 1099–1100)։

Ասով հանդերձ Ստեփան պատուելիի տնօրէնութեան շրջանին, Կէրմիրի վարժարանը ստացաւ արտասովոր փայլ մը, վասնզի հոն մինչև այն ատեն տրուած ուսումէն տարբեր նիւթերու ծանօթացան շատեր։ Հոն աւանդուած թուրքերէնը՝ ինքնուս ուսուցիչի մը կողմէ, շատ աւելի զօրաւոր էր թուրք հօճաներու աւանդածէն, այնպէս որ այդ շրջանին Կէրմիրի Պարթեւեան ազգային վարժարանը կը յաճախէին Կէրմիրի թուրք երեւելիներուն 30ի չափ տղաքները որոնք ո՛չ միայն հայերէն դասերուն կը հետեւէին այլ նաև քրիստոնէական ալ կ'ուսանէին և Գրիգոր Մարկոսեանի նշանաւոր քրիստոնէականին հարց պատասխանները իրենք ալ գոց կը սորվէին, մեծ հրճուանք և ուրախութիւն պատճառելով իրենց ծնողքներուն և այսպէս շահելով Կէրմիրի թուրք էշրաֆին համակրանքը, (Տիար Հայկ Ինայէթեանէ ստացուած տեղեկութիւններ)։

Կէրմիրցիք, աւելի մեծ զարկ տալու և օգտակարութեան տեսակէտով, իբր առեւտրականներ, նաև անգլիերէն լեզուն կը ներմուծեն ուսմանց նիւթերուն մէջ, 1866ին իբր դասատու բերելով Յովհաննէս Տիւմանեանը(1) որ հմուտ էր անգլիերէն լեզուի, ինչպէս նաև ուսողական գիտութեանց և աշխարհագրութեան։ Տիւմանեանի ներկայութիւնը պատճառ եղաւ որ, օտար լեզու մը սորվելու փափաքով կարգ մը չափահաս տղաքներ, իրմէն դաս առնեն իրենց առեւտրական գործերու մէջ անգլիերէնի ծանօթութենէն օգտուելու համար։ Անոնց մէջ էին նաև Յարութիւն Նշանեան, Ստեփան Գըպրըլեան և Մաթէոս Եսայեան եւայլն, որոնք ուսուցչական ասպարէզ մտան յետոյ։

Դժբախտաբար այս նորութիւնը որ Տիւմանեան կը մտցնէր Կէրմիր երկար չտեւեց, վասնզի ան 1866–1868 երկու տարի պաշտօնավարելէ յետոյ հրաժարեցաւ և հեռացաւ Կէրմիրէն։ Իր հետը հրաժարեցաւ նաև Կարապետ Վահան, թուրքերէնի ուսուցիչը և Ստեփան պատուելի Երլանճեանի անդրանիկ գործակիցը։

Յաջորդ տարին (1869) սակայն Կէրմիրցիք, իրենց վարժարանին տնօրէնութեան կոչելով Գառնիկ Մելիքեանը, դէպի արդիացում

(1) Պ. Դանիէլ Պօյաճեան իր երկու ձեռագիր յիշողութիւններուն մէջ, այս անունով կը յիշէ, Գառնիկ Ս. Դաւիթեան, Բրօֆ. Գառնիկ Տիւմանեան կը կոչէ այս անձը։ Ես առաջինին հետեւեցայ։

կարեւոր քայլ մը առին, վասնզի Նոր տնօրէնը, ջնջեց վարժարանէն գանակոծութիւնը։ Գառնիկ Մելիքեան, հետեւելով Կ. Պոլսոյ վարժարաններու օրինակին, իբր օտար լեզու անգլիերէնի տեղ ֆրանսերէնի ուսուցումը ներմուծեց վարժարանին ուսմանց ծրագիրին մէջ։ Գառնիկ Մելիքեան, իբր մասնագէտ ֆրանսերէնի և քանակագիտութեան, այդ ճիւղերը ինքն դասախօսել սկսաւ։

Դարձեալ հասուն աշակերտներ օգուտ քաղեցին իր ներկայութենէն և այս անգամ ալ ֆրանսերէնի հմտացան։

Իրեն աշակերտեցան Մկրտիչ Ս. Սահակեան, Յարութիւն Նշանեան, Ստեփան Գըպըրըլեան, Խաչատուր Պաղտասարեան, Մատթէոս Եսայեան, Խաչէր Եղիաեան, Դանիէլ Պօյաճեան և Դանիէլ Եսայեան, որոնցմէ ոմանք արդէն կը վարէին վարժարանին մէջ օգնական-ուսուցիչի պաշտօն։ Ասոնք իրենց պաշտօնը շարունակելով հանդերձ առաջ տարին իրենց ուսումը։

Գառնիկ Մելիքեան որ 1869ին պաշտօնի կոչուած էր իբր տնօրէն երեք տարի միայն պաշտօն վարեց և 1872ին հրաժարեցաւ։ Իր պաշտօնավարութեան շրջանին Ստեփան պատուելի Երլանճեան կը շարունակէր դասախօսել։ Այս մեծ ուսուցիչը, և Կէրմիրի Պարթեւեան վարժարանը հիմնովին բարեկարգող բազմաբեղուն վաստակաւորը, որ իր անբասիր վարքով մեծ համակրանք շահած էր 1873ին զոհ կ'երթայ կուսակցական պայքարի սարսռազդեցիկ մահով մը, 12 տարիներ արդիւնաւորութեամբ ծառայելէ յետոյ։

Կէրմիրցիք, որոնք այնքան սիրով և միաբանութեամբ 1862էն յետոյ բոլորուած էին իրենց Պարթեւեան վարժարանին շուրջը և միակամ ու եռանդով, անոր յաջողութեան համար կ'աշխատէին, հազիւ տասը տարիներ յետոյ, 1872ին ներքին պառակտումի մատնուեցան և երկու կուսակցութեանց բաժնուելով, ատելավառ զգացումներով իրարու հետ մաքառեցան, և այսպէս քանդեցին այն գեղեցիկ գործը որ իրենք յաջողած էին ստեղծել։

1872ին պատահած սով ալ որ այնքան վնասած էր Կեսարիոյ՝ հարուածեց նաև Կէրմիրը, որուն տնտեսական բարգաւաճումը կասեցաւ, վասնզի շատեր սկսան գաղթել և այլուր բախտ փնտռել։

Այլեւս Կէրմիրի փառքի օրերը անցած էին և գիւղաքաղաքին անկումը և անշքացումը սկսած էր։ Իր վարժարանն ալ հետզհետէ ինկաւ, թէև բաւական ատեն տակաւին կրցաւ պահել իր երբեմնի փայլը։

1873ին վարժարանին տնօրէնութեան կոչուեցաւ Յարութիւն Նշանեան, Պարթեւեանի նախկին աշակերտներէն, որ կրցաւ իր կարգին հասցնել կարող աշակերտներ։ Այդ շրջանին հոն ուսում ստացան Ռօպէնսոն Թապիպեան (յետոյ բժիշկ, որ Բարիզ հաստատուած էր), Գէորգ Դաւիթեան, Աբրահամ Թիւթիւնճեան, Մեսրոպ Թաշճեան, Ռուբէն Մարգարեան, Եղիա Գըպըրըլեան, Յովհաննէս Թաշճեան և Յարութիւն Գապալագեան, որոնք իրենց կարգին ծառայեցին ուսուցչական մարզին մէջ։

Հակառակ մէկ կողմէն նիւթական ձախող պայմաններուն և Կէրմիրի տնտեսական անկումին, և միւս կողմէ զիրենք պառակտող վէճերուն, Կէրմիրցիք իրենց վարժարանը կարելի եղածին չափ բարւոք վիճակի մէջ պահելու համար ամէն զոհողութիւն կ'ընէին դեռ։



1876ին Յարութիւն Նշանեանի կը յաջորդէր իբր տնօրէն իր աշակերտը՝ Աբրահամ Թիւթիւնճեան, որուն շրջանին վարժարանին փայլուն աշակերտներն կը հանդիսանային Ստեփան Թապիպեան, Դանիէլ Նշանեան, Դաւիթ Տ. Մովսէսեան, Յովհաննէս Մըխճեան, Միհրան Գայըշեան, Սերվիչէն Պահարեան և Տիգրան Սարը Սարգիսեան։

Կէրմիրի Պարթեւեան վարժարանի տնօրէնութեան կը կոչուի 1883ին Դանիէլ Պօյաճեան, վարժարանին անդրանիկ սաներէն մին։ Իրեն հետ ունէր անիկա իբր ուսուցիչ, Պօղոս Գնդունի, որ միանգամայն երաժշտապետ էր եկեղեցիին, Դանիէլ Նշանեան, Դաւիթ Տ. Մովսէսեան, Յովհաննէս Մըխճեան, Սերվիչէն Պահարեան, Միհրան Գայըշեան և Տիգրան Սարը Սարգիսեան։

Ասիկա վերջին փայլն էր որ կը տրուէր Կէրմիրի վարժարանին, որ այլեւս երբեք չկրցաւ դարձ մը ընել դէպի իր փառքի օրերը, վասնզի Կեսարիոյ քաղաքին դպրոցները և Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը, որ քիչ յետոյ պիտի բացուէր, լիուլի և աւելի մեթոտիկ կերպով պիտի լրացնէին պէտքերը վիճակին և շրջակայից, մինչ մինչև այդ թուականը գրեթէ վիճակին ուսուցչանոցի դերը կատարած է Կէրմիրի Պարթեւեան վարժարանը, որուն աշակերտները՝ նոյնիսկ առաջին ուսուցիչները եղան Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին։

Արդարև մինչև 1880ական թուականները հոն դաստիարակուած, մասնաւորապէս Կէրմիրցի և Թալասցի խումբ մը երիտասարդ ոյժեր, յեղաշրջած էին Կեսարիոյ և շրջականերու կրթական գործը և վիճակին բոլոր թեմերուն վարժարաններուն մէջ գրեթէ ուսուցչական պաշտօնները իրենց սեփականած։ Կէրմիրի վարժարանին աշակերտներն եղան Կեսարիոյ թեմին կրթական վերածննդեան գլխաւոր գործաւորները, ինչպէս Խաչատուր Պաղտասարեան, Կարապետ Շահինեան, Յարութիւն Նշանեան, Ստեփան Գըպըրըլեան, Մատթէոս Եսայեան, Խաչէր Եղիաեան, Դանիէլ Պօյաճեան, Մերկերիոս Ադամեան, Կարապետ Պօտիկեան, Եղիա Գպըրըլեան, Կարապետ Քէրթմէնեան, Սագաթիէլ Կէմիճեան և այլ և այլ, որոնք իրենց առաւել կամ պակաս երկարատև պաշտօնավարութեամբ, և իրենց խղճամիտ և անձնուէր ծառայութեամբ, յարգանքին ու սիրոյն արժանացած են իրենց երախտագէտ աշակերտներուն։ Անոնք արդարև նշանաւոր դեր կատարեցին վիճակին կրթական վերածնութեան մէջ, թէ՛ քաղաքին և թէ գաւառին գիւղօրէից մէջ իբր կրթական մշակներ գործելով։

Դասը զոր տուաւ Կէրմիր՝ քաղաքին և շրջակայ աւաններուն՝ թելադրական եղաւ և պատճառ՝ արթնցնելու անոնց թմրութիւնը և հետզհետէ շարժումը ծաւալեցաւ միւս աւաններուն մէջ ուր կազմակերպուեցան աւելի կամ նուազ բարգաւաճ ու բարեկարգ վարժարաններ։

2. ԱՆԴՐ-ԱՐԳԵՂՈՍԵԱՆ ՇՐՋԱՆԱԿ.— Այս շրջանին կեդրոնական քաղաքաւանն էր Էվէրէկ-Ֆէնէսէ, որ կը բաղկանար ինչպէս արդէն բացատրուած է երկու թաղամասերէ որոնք կարծես իրարու նախանձորդ կամ մրցակից, իրար կը հալածէին։ Այս մրցորդութիւնը՝ կրթական մարզին մէջ իր օգտակարութիւնը ունեցած է և երկու թաղերը շարունակ աշխատած են իրարմէ ետ չմնալ։

Անդր-Արգեղոսեան շրջանին այս կեդրոնը ինչպէս իր ծագումով

նոյնպէս իր նկարագրով բաւական կը տարբերէր Այսր-Արգեղոսեան շրջանակէն, մասնաւորապէս իր հայախօս ըլլալու հանգամանքովը։ Հոն հետեւաբար կրթական գործն ալ տարբեր ուղղութիւն պիտի ունենար, քանի որ թրքախօս տղոց Հայ լեզուն իբր օտար լեզու ուսուցանելու խնդիր չի կար։

Ինչպէս ամէն տեղեր առհասարակ նոյնպէս նաև Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ «եկեղեցւոյ կողքին՝ միշտ գոյութիւն ունեցած է սրահ մը, դըպրատուն անունով...։ Ան ծառայած է տիրացուներ պատրաստելու և առեւտրականի տղաքը կարդալ-գրելու, հաշուելու և նախնական գիտելիքներու վարժեցնելու։ ԺԸ. դարու վերջերէն մնացած հաշուական տետրակներ և մուրհակներ իրենց ձեռագրի յստակութեամբ և հաշիւներու ճշգութեամբ ցոյց կու տան որ դպրատունը ժամանակին պահանջները կրցած է գոհացնել որոշ չափով» (Գաբրիէլ Ս. Թագւորեան, Ֆէնէսէ եւ իր կրթական շարժումը, ձեռագիր)։

Անցեալ դարուն կէսերը, նոր ոգեւորութիւն մը կը նշմարուի կրթական տեսակէտով, շնորհիւ Կ. Պոլիսէն վերադարձող երիտասարդներուն որոնք կիրակնօրեայ վարժարաններու հետեւած էին հոն և մասամբ օգտուած՝ այս ժողովրդական դասընթացքներէն։ Ղալաթիոյ եկեղեցւոյ շրջափակին մէջ Անձնուէր ընկերութեան հաստատած կիրակնօրեայ վարժարանը, որուն անձանձրոյթ դասախօսը մնաց մինչև վերջը՝ Քրիստոստուր Ղազարոսեան, մեծ դեր խաղացած են այն ատեն կրթական զարթօնք մը յառաջացնելու համար ժամանակակից նոր սերունդին մէջ և Էվէրէկ Ֆէնէսէի պանդուխտ երիտասարդութիւնն ալ անմասն մնացած չէ այդ շարժումէն։

Վերադառնալով հայրենիք, այս ուսումնատենչ երիտասարդները, մեծ խանդով նուիրուած են եկեղեցւոյ և դպրոցի յառաջդիմութեան։ «Ահարոն վարժապետ, Կարապետ Բառնաբասեան և ուրիշներ, Կ. Պոլիսէն վերադարձին, երկար տարիներ մնացած են իրենց ծննդավայրը՝ Ֆէնէսէ և ծառայած՝ կրթական գործին։ Նոյնպէս Յակոբ Ապահեան, Երուսաղէմի վանքին մէջ ուսած և կրօնաւորութեան պատրաստուած Ֆէնէսէ գալուն, երկար տարիներ՝ իբրև ուսուցիչ ծառայած է հոն» (Գ. Թագւորեան, նոյն)։

Գալով Էվէրէկի դպրատան ան 1840ական թուականներուն արդէն գոյութիւն ունէր։ Հոն 1845ին իբր վարժապետ կը յիշուի Պաղճը-Օղլուն, իսկ 1850-1855 թուականներուն հոն կը դասախօսէ Գարա-Տէտէ հայերէն և թուրքերէն։ Իրեն հետ ժամանակակից են Ազգար Ազգարեան (1852) որ թէ՛ տիրացու էր և թէ՛ վարժապետ և «Հաճի Մուլլա» անունով ծանօթ Գրիգոր պատուելի մը (ըստ Յակոբ Արզումանեանի «Մոլլա Գրիգոր») (1858) որ թուրքերէնի և ռախամի հմուտ էր և գաւառին մէջ համբաւ շահած (Յակոբ Արզումանեան, Էվէրէկի պատմութիւնը, էջ 63)։ Իրմէն թուրքերէն սորված էին շատերը։ Իր Մոլլա կամ Մուլլա անունը արդէն ստացած էր իր թրքերէնի հմտութեան համար։ 1855ին Էվէրէկի վարժարանին դասատու կ'ըլլայ Լաչին-օղլու Կարապետ աղա, որ Սաղմոս, Գործոց և Նարեկ կը կարդացնէր,—ժամանակին գիտութիւնները— ինչպէս նաև կը սորվեցնէր թուրքերէն նամակագրութիւն և ռախամ։ Առաջին անգամ դպրոցի կանոնաւոր կազմը Էվէրէկի մէջ կ'ստեղծէ այս պատուելին որ տղաքը «Կարպաղա» կ'անուանէին։



Այս շրջանին իսկ վարժարանը ունէր երկու բաժանում, Նախակրթարան և Ուսումնարան։ Նախակրթարանի բաժինին մէջ դասագիրքերն էին քերական, հեգերէն, Գործոց, Նարեկ, թուաբանութեան չորս գործողութիւնները։ Իսկ Ուսումնարանին մէջ կը դասախօսուէր քերականութիւն, թուաբանութիւն, աշխարհագրութիւն Հայոց պատմութիւն, Քրիստոնէական և Աւետարանի լուծում և թարգմանութիւն։ Գալով թուրքերէնին կը սորվեցնէին պարզ ընթերցում, գրաւարժութիւն և տղոց ձեռքը տուած էին Միւֆթամ Իւլ ուլում անուն դասագիրք մը որ մասամբ թուրքերէն, մասամբ արաբերէն և մասամբ պարսկերէն էր։

1857ին օգնական կը դրուի Ղուրատենց Մուշ(1) և Անափալենց Սինան աղաները, որոնք շուտով կը ճամբուին, վասնզի դաս տուած ատեն կը քնանային (նոյն, էջ 68)։ Ասոնց կը յաջորդեն երկու նորահաս երիտասարդներ՝ Խաչատուր Լաչինեան և Խունկիանոս, որոնք չեն կրնար տոկալ, վասնզի տղաք փոսքերը (Էվէրէկի բարբառով փէսթ=այծի մորթ= փոէսքէկի, որ տղաք վրան նստելու համար դըպրոց կը տանէին) կը քաշեն Ղունկիանոսի վրայ և զայն կը փախցնեն (Յակոբ Արզումանեան, նոյն, էջ 63)։ Նոյն ճակատագիրը կ'ունենայ նաև 1870ին Կ. Պոլիս գտնուող և Զաթալ խանի մէջ աշխատող Էվէրէկցիներու կողմէ իրենց ծննդավայրը ղրկուած Վռամշապուհ անուն երիտասարդ ուսուցիչ մը, որ կու գայ կը հաստատուի դպրոցին մէջ և հոն ալ կը բնակի։ Աղաները մասնաւորապէս ասոր դէմ կ'ելլեն և իրենց թելադրութեամբ թերեւս կօշկակարի աշակերտները, ջուրով կը թրջեն վարժապետը, որ քանի մը օր վերջը կը դառնայ Կ. Պոլիս (նոյն, էջ 69)։

1875ին Էվէրէկցի Բարսեղ Վարդուկեան կը դառնայ Ամերիկայէն իր ծննդավայրը և երկու տարի(2) վարժապետութիւն կ'ընէ։ Այս Օքսֆորտէ վկայեալ համալսարանականը որ կրնար մեծ ծառայութիւն մատուցանել եթէ մնար, դժբախտ պատահարի մը(3) հետեւանօք հեռացաւ իր ծննդավայրէն։ Դպրոցը մնաց դարձեալ Կարապետ Լաչինեանի տիրական իշխանութեան տակ։ Ան թուրքերէն չգիտնալուն համար 1875ին կամ 1877ին վարժապետ կ'ընեն Մոլլա Գրիգորի աշակերտներէն Դաւիթ Զօմախլեանը (Զօմախլուցոնց) որ 1879ին կառավարական սնտուկի սեղանաւոր եղաւ և ուսուցչութենէ հեռացաւ, և իրեն յաջորդեց Մերկերիոս Ադամեանը, որ միայն տարի մը (1879-1880) կը մնայ (Յ. Արզուման, նոյն, էջ 70)։ Ասոր կը յաջորդէ Կ. Պոլիս կրթուած բնիկ Սարգիս Մէլէքեան (յետոյ Տ. Կարապետ քհ. տես կենսագրութիւնը էջ 829) որ մինչև 1915, 35 տարի շարունակ մնաց թուրքերէնի ուսուցիչ։

Այսպէս Էվէրէկի վարժարանը մինչև 1883 թուականը կը մնայ Գարա Տէտէի և Կարապետ աղա Լաչինեանի պէս հնօրեայ պատուելիներու ձեռքին մէջ, պատահական օգնականներով, որոնք

(1) Կարապետ Շիշմանեան Մուշուշ Մուշուշեան անունով կը ճանչնայ զայն։

(2) Ըստ Կարապետ Շիշմանեանի վեց ամիս։

(3) Ըստ Կ. Շիշմանեանի թէ ինքն և թէ ժողովուրդը յուսախաբ ըլլալով թողած է իր պաշտօնը։

սակայն տեւական կեանք չեն ունենար։ Անոնց պաշտօնավա-րութեան շրջանին դպրոցին բարեկարգութեան և տղոց զգաստու-թեան միջոցը Ճալախան էր որ կը տիրապետէր երկար ատեն։ Վար-դուկեանի և այլոց ազդեցութեամբ ֆալախան վերցուեցաւ դպրոցէն սակայն ծեծը պահուեցաւ։ Թէ՛ Նախակրթարանին և թէ՛ ուսումնա-րանին մէջ վարժապետը իր ձեռքի քանակը խեղճ տղոց ձեռքերուն կը զարնէր, թէ՛ ափին և թէ՛ դուրսի կողմին։

Այս «թեւադատ» վարժապետներուն մէջ իրենց անգթութեամբ և վայրագութեամբ ամէնէն նշանաւորները հանդիսացած էին Գարա Տէօտէ և Կարապետ աղա Լաչինեան, իսկ ուսումնարանի բաժնին մէջ Դաւիթ Զօմախլեան, որ անխնայ կը զարնէր տղոց, այնպէս որ շատ մը տղաք ծեծէ խուսափելու համար կամ անոր չհանդուրժելով դըպ-րոցը կը ձգէին և կը հեռանային։

Այնքան չարաչար կը ծեծէին որ ծեծի տակ մարողներ շատու-շատ էին։

Դպրոցը՝ արդի դպրոցներուն պէս տարեկան արձակուրդ չունէր այլ 12 ամիս անընդհատ կը շարունակուէր։

Դասերը՝ թութակօրէն գոց կ'ընէին աշակերտները։ Ո՛չ քննու-թիւն և ո՛չ ալ դպրոցական հանդէսներ կը կատարուէին։

Երբ այս էր վիճակը Էվէրէկի մէջ տարբեր չէր կացութիւնը՝ մըր-ցորդ Ֆէնէսէի մէջ, ուր կը պաշտօնավարէին իբր վարպետներ (խալֆա) Իշմազ Տէր Պապան, Պօղոս աղան, Մաշլախճի Հաճի Յակոբ աղան, Տորտաննեց Յակոբ աղան, որոնք նոյնպէս Քերական, Սաղմոս, Նա-րեկ կը կարդացնէին, համանման պայմաններու մէջ։ Այս վարժապետ-ները կանոնաւոր թոշակ չէին ստանար։ Զանոնք «վարձատրելու ձեւը շատ աւանդական եւ իսկատիպ էր: Զարմանալիօրէն կը յիշեցնէր ան հին դա-րերու կրօնական գործիչներու ապրելակերպը: Թոշակ անուան տակ շատ ան-նշան գումար մը կը վճարուէր վարժապետին, որ իր ապրուստին մեծագոյն մա-սը կ'ստանար նուիրատուութիւններու ձեւին տակ: Այդ նուիրատուութիւնները կը կատարուէին տարւոյն բոլոր եղանակներուն մէջ, սակայն տարւոյն առաջին օրը, Կաղանդին՝ ընդհանրական էր եւ առատաբուխ: Բոլոր աշակերտները կ'աշ-խատէին իրար գերազանցելու այդ օրը, նուիրատուութեան նիւթին եւ քանակին տեսակէտով: Վարժապետը կ'ընդունէր այդ օրը իբրեւ կաղանդչէք, օղի, մեղր, իւղ, ընդեղէններ, ձաւար, աքաղաղ, կտաւեղէններ, գուլպայ՝ իր տանը մէջ, եթէ ժողովուրդին համակրութիւնը շահած էր առանձնապէս եւ կամ այդպէ՛ս ու-զէր ինքը: Ընդհանրապէս, սակայն այդ նուիրաբերութիւնը կ'ընդունուէր դըպ-րոցին մէջ հաւաքաբար՝ բոլոր ուսուցիչներու կողմէ եւ յետոյ կը բաշխուէր ա-նոնց մէջ հաւասարապէս: Վարժապետին տարեկան ապրուստը կ'ապահովուէր գրեթէ Կաղանդին օրը» (Գաբրիէլ Թագւորեանի ձեռագիր)։

Դպրոցը իբր եկեղեցւոյ նախադուռը տիրացուներ պատրաստելու հաստատութիւն մը նկատուած էր, քանի որ անով է որ կ'ապահով-ուէր եկեղեցական պաշտամունքներու անխափան ու կանոնաւոր կա-տարումը։ Ֆէնէսէցիք՝ ամէնէն աւելի ատով շահագրգռուած էին իբր ջերմեռանդ եկեղեցասէրներ և ամէնէն առաջ աշխատած՝ լաւ տի-րացուներ ունենալու։ «Հիացած Կ. Պոլսոյ Մայր-եկեղեցւոյ ժամերգութեան ներդաշնակութեան վրայ, փափաքած են նոյն երգեցողութիւնը լսել նաեւ, ի-րենց պանդխտութենէն վերադարձին, հայրենիքի Ս. Թորոս եկեղեցւոյ գմբէթին տակ: Ուստի քաջալերած են իրենց հայրենակից տղաքը հետեւիլ Մայր եկեղեցւոյ



դպրապետ նշանաւոր երաժիշտ Նիկողոս Թաշճեանի (1841–1885) եկեղե-ցական երգեցողութեանց: Մէկ քանի ուշիմ եւ ընդունակ պատանիներ, օգ-տուելով հայրենակիցներէ իրենց ընծայուած նիւթական եւ բարոյական միջոց-ներէն, կրցած են լիովին տիրանալ կրօնական երաժշտութեան արուեստին եւ դառնալով հայրենիք, մեծ խանդով նուիրուած են ժամերգութեան կանոնաւոր-ման: Այս ուղղութեամբ, առանձին յիշատակութեան արժանի են Գրիգոր Վար-ժապետեան եւ Գրիգոր Պասմաճեան ձայնաւոր ուսուցիչները, որոնց հռչակը իբրեւ դպրապետ՝ Ֆէնէսէէն դուրս ալ տարածուած է: Այս երաժիշտ-ուսուցիչ-ները հասցուցած են բազմաթիւ աշակերտներ: Շրջակայ քաղաքները եւ գիւղերը միշտ Ֆէնէսէցի ձայնաւոր ուսուցիչներ ունեցած են կանոնաւորելու համար ի-րենց եկեղեցական երգեցողութիւնը»:

Բայց ժամանակը իր ազդեցութիւնը ի գործ պիտի դնէր նաև այս երկու աւաններուն վրայ։ Կրթական գործին Կ. Պոլսոյ մէջ տրուած կարեւորութիւնը և Կ. Պոլսոյ երիտասարդութեան ճիգերը և ձեռնարկ-ները՝ Հայաստանի լուսաւորութեան համար, կրթական ընկերու-թեանց կազմութիւնը, մանաւանդ Միացեալ Ընկերութեան հիանալի գործունէութիւնը, ինչպէս ուրիշ շատ մը գաւառներու նոյնպէս Էվէ-րէկ-Ֆէնէսէի մէջ արթնութեան պատճառ եղան և բարի նախանձ ստեղծեցին Կ. Պոլիս հաստատուած գաւառացի պանդուխտներու մէջ, որոնք իրենց ծննդավայրին դպրոցներուն նպաստելու աշխատեցան։

Էվէրէկցի Չաթալ խան հաստատուած մեծ թուով պանդուխտները այս բարի նախանձը իրենք ալ ունեցան և ուզեցին 1883ին Կ. Պոլսոյ մէջ կրթութիւն առած տնօրէն մը Էվէրէկ ղրկել, պարզապէս իրենց վարժարանը արդիացնելու և նոր դրութեամբ կազմակերպելու հա-մար, ուստի Պատրիարքարան կը դիմեն և անոր հաստատութեամբ Երուանդ Երկաթեանը՝ զոր Էվէրէկցիք կը կոչէին «Երուանդ պատուե-լի» երեք տարուան պայմանագրութեամբ և տարեկան 100 ոսկի վճա-րումով կը ղրկեն Էվէրէկ։

Աղաները այս անգամ տեղի կուտան և Երուանդ Երկաթեան գե-ղեցիկ ընդունելութեան մը կ'արժանանայ Էվէրէկցիներու կողմէ և արդարև իրենց ակնկալութեանց մէջ յուսախաբ չեն ըլլար Էվէրէկ-ցիք, վասնզի Երկաթեան լրջօրէն կը բարեկարգէ վարժարանը իր ե-րեք տարուան պաշտօնավարութեան ընթացքին։ Անիկա իսպառ ծեծը կը ջնջէ վարժարանէն, ինչպէս նաև գոց ուսանելու հնօրեայ դրու-թիւնը։ Նօթագրութեան և արձանագրութեան տետրեր կը հաստատէ, քննութիւն կը կատարէ, մրցանակաբաշխութեան հանդէսներ կը սարքէ։

Իր օրով առաջին անգամ ֆրանսերէն լեզուի դասախօսութիւններ կ'սկսին Էվէրէկի մէջ։ Թուրքերէն լեզուի դասախօսութեան համար Գավայիտ Օսմանիյէ կը կարդացնէ, ինչպէս նախակրթարանի բաժնին մէջ կը ներմուծէ նոր ընթերցանութեան դասագիրքեր, անկէ դուրս վանելով Հեգերէնը, Սաղմոսը, Գործոցը և Նարեկը։ Իր փայլուն աշա-կերտները կ'ըլլան Յովհաննէս Աջուկեան, Ալիքսան Քէօլէեան, Սար-գիս և Տօնիկ Տօնիկեան։

Բայց հազիւ թէ Ե. Երկաթեանի եռամեայ պայմանագրութեան շրջանը լրացած էր Աղաները՝ չուզեցին զինքը (Յ. Արզուման, էջ 70)։ Իսկ Կարապետ Շիշմանեան կ'ըսէ թէ իր ամսականները կանոնա-ւոր չվճարուելուն համար Երուանդ Երկաթեան հրաժարած է և կե-

*տարիոյ համբով Կ. Պոլիս դարձած ատեն կեսարացիք զայն վար դրած են, և օգտուած՝ իր կարողութիւններէն։*

*Երուանդ Երկաթեանէն յետոյ 1887ին դպրոցը նորէն կը մնայ Կարապետ Լաչինեանի և Տ. Կարապետ Մելէքեանի, որուն տեղ Թուրքերէնի դասատու եղաւ երեք տարի Երուանդ Երկաթեանի աշակերտներէն Սարգիս Տօնիկեան, որ յետոյ Իզմիր գնաց։*

*Կարապետ Լաչինեանով, Տէր Թոդիկեան դրութեան վերադարձ կ'ընէր վարժարանը կրկին, և կը մատնուէր անշքացման։*

*Էվէրէկի օրինակը սակայն անհետեւանք չի մնար։ Կ. Պոլիս գտնուող Ֆէնէսէցիք եւս ազդուելով էվէրէկցիներու օրինակէն, իրենք ալ Կ. Պոլիսէն վարժապետ մը կը ղրկեն։ Արդէն անոնք Կ. Պոլսոյ մէջ իրենց ծննդավայրին դպրոցին նպաստելու նպատակով կազմած էին Ռուբինեան ընկերութիւնը։ Այս ընկերութիւնը՝ էվէրէկցիներէն ետ չմնալու նախանձախնդրութեամբ, 1888ին, իբր տնօրէն ուսուցիչ պաշտօնի կը հրաւիրէ Համբարձում Ամատունին (հիմա Մեսրոպ վրդ.), 70 ոսկի տարեթոշակով,* «զոր միութեան վարչութիւնը ուղղակի, կանոնաւորաբար իրեն վճարելու խոստում տուած էր: Իր ժամանակին աննախընթաց գումար մըն էր այս թոշակը որուն կառավարական պաշտօնեաներն անգամ կրնային նախանձիլ: Միութիւնը յանձնառու եղած էր նիւթական այս զոհողութեան, համոզուած ըլլալով որ հնարաւոր չէր ո՛չ այդ կարողութիւնով տնօրէն մը գտնել գաւառի իրականութեան մէջ եւ ո՛չ ալ տեղական միջոցներով վարձատրել զայն: Իսկապէս, ամէնէն յարմար կարգադրութիւնն էր այս, տրուած պարագաներուն մէջ» (*Գաբրիէլ Թագւորեանի ձեռագիր*)։

«Ուսուցչական թոշակ սահմանելու՝ Ռուբինեան ընկերութեան նախաձեռնութիւնը այնուհետեւ ընդհանրացաւ Ֆէնէսէի մէջ եւ հին աւանդական ձեւը վերջնապէս մոռցուեցաւ» (*Նոյն*)։

*Հ. Ամատունիի պաշտօնավարութիւնը դարագլուխ մը եղաւ Ֆէնէսէի համար ինչպէս եղած էր Երուանդ Երկաթինը՝ Էվէրէկի համար, վասնզի ան* «կը ձեռնարկէ կրթական բարեկարգութեան, ուղեցոյց ունենալով Պոլսոյ Ազգ. վարժարաններու Ուսումնական ծրագիրը եւ Կազմ. կանոնագիրը: Իր աշխատանքը կը կեդրոնացնէ ուսուցման առարկաներու, անոնց դասաւանդման եղանակին, դասագրքերու ընտրութեան, պիւտճէի կարգաւորման եւ այլ դպրոցական յարակից խնդիրներու վրայ: Այդ հարցերու կարգադրութեան մէջ կը յաջողի արմատական բարեփոխութիւններ մտցնել, շնորհիւ այն հանգամանքին, որ կ'արհամարհէր տեղական խոչընդոտները, կապուած ըլլալով ինքը ուղղակի Պոլսոյ Ռուբինեան Մ. ընկերութեան վարչութեան: Սակայն այս պարագան բաւարար չէր յաղթահարելու համար շրջապատող դժուարութիւնները. եթէ ուրիշ հանգամանք մը, իր անձնական հեղինակութիւնը բարձր եւ անվիճելի չդարձնէր հասարակութեան առջեւ: Կարող եւ փորձառու բժիշկի մը համբաւը շահած էր Ամատունի եւ ժողովուրդը, որ այդ շրջանին վկայեալ բժիշկի մը խնամածութիւնը չէր վայելած դեռ, պարզապէս կը պաշտէր զայն, մէկ քանի ծանր հիւանդներու առողջանալուն անձամբ ականատես եղած ըլլալով: Անոր խօսքը պատգամ էր այդ օրերուն եւ ինչ որ կը կարգադրէր վարժարանին համար, կ'ընդունուէր անվերապահօրէն ամէնուն կողմէ: Թէեւ կարգ մը հարուստներ դժգոհ էին որ Ամատունի իրենց սովորական յարգանքը չէր մատուցաներ եւ ժողովուրդին հետ հաւասար մակարդակի վրայ կը բռնէր զիրենք, սակայն անոնք չէին կրնար չարակամ վերաբերում մը ցոյց տալ անոր հանդէպ, վախնալով վայելած ժողովրդականութենէն: Այսպիսի նպաստաւոր պայմաններու տակ,



Ամատունի յաջողած է իր կրթական առաքելութեան մէջ: Պիւտճէի պատրաստութեան մէջ, ժողովուրդին մասնակցութիւնը ապահովելու համար, հաստատած է թոշակի դրութիւնը: Ամէն հայր պարտաւոր էր 135 դրշ. վճարել միանուագ, որպէսզի իրաւունք ունենար իր մանչ զաւակները Ուսումնարան արձանագրել տալու:

Նախակրթարանի բաժինը, Ուսումնարան անուան տակ, բաժնուած է Ծաղկոցէն, եւ նոր շէնքի մը պէտքը զգացուցած: Եկեղեցւոյ բակը, աղբիւրի կողքին, ընդարձակ սրահ մը մինչ այն, ծառայած էր իբրեւ դպրատուն մանչերու: Իսկ եկեղեցւոյ պահարանին կողմը, մատրան կից սրահ մը կը գործածուէր իբրեւ վարժարան երախաներու եւ աղջիկներու: Բարեբախտաբար, այդ օրերուն կը գտնուի բարերար մը Յովհ. Քէշիշեան, որ 200 ոսկի կը տրամադրէ նոր դպրոցի մը կառուցման համար: Ժողովուրդը խրախուսուած այդ նուիրատուութենէն եւ ձեռնարկին հանրօգուտ հանգամանքէն, աշխատանքի կը լծուի եւ կը բարձրանայ վարժարանին նոր շէնքը եկեղեցւոյ բակին վրայ, օդաւէտ, բարձրահայեաց եւ ընդարձակ: Եկեղեցիէն դպրոց ելնելու համար, պէտք էր մագլցիլ 4–5 սանդխամաս վեր, ուր դէմ առ դէմ կը գտնուէին երկու դուռները՝ Ուսումնարանին եւ Ծաղկոցին, մանչերու վարժարանին կից, ուղղահայեաց գիծով շինուած էր աղջկանց բաժինը, նոյնպէս բարձրադիր, օդաւուն շէնք մը եկեղեցւոյ բակին վրայ նայող:

Ամատունի ո՛չ միայն նոր շունչ մը կը մտցնէ դաստիարակման մեթոտին մէջ, այլ կ'աւելցնէ նաեւ ուսման նոր առարկաներ, Շարադրութիւն, Ազգ. Պատմութիւն, Գիտութիւն, Աշխարհագրութիւն, համապատասխան դասագրքերն ալ բերել տալով Կ. Պոլսէն:

Այսպէս հիմը կը դրուի Ֆէնէսէի մէջ արդի վարժարանին: Տղաքը կը վարժուին վարժարան յաճախելու, ուսումը ինքնաբերաբար պարտաւորիչ կը դառնայ ամէն երախայի համար: Չորս տարի կը տեւէ Ամատունիի պաշտօնավարութիւնը, օգնական ունենալով Յակոբ Իսմազեան եւ Խաղ սրկ. Մարգարեան: Կ'ունենայ աշակերտներ, որոնք հետագային կը կազմեն զարգացեալ սերունդ մը եւ կ'ազդեն ազգային գործերու վրայ:

1892ի յեղափոխական շարժումը կը խանգարէ այս կրթական արդիւնաւոր շարժումը: Ամատունի իբրեւ հնչակեան կը ձերբակալուի եւ ուրիշ շատերու հետ, կը ղրկուի Գաղատիա, Պատերզմ. ատեանին առջեւ դատուելու համար: Ընդհանուր ներումէն օգտուելով, թէեւ տարի մը վերջ Ամատունի կը վերադառնայ Ֆէնէսէ, սակայն երկարամեայ բանտարկութեան մը տառապանքներէն դառնացած եւ յուսահատ, կը ստիպուի թողուլ իր պաշտօնը եւ վերադառնալ Կ. Պոլիս:

Ֆէնէսէի կրթական կեանքին մէջ, Ամատունիի գծած ակօսը այնքան խորունկ էր որ հետագային կրթական մշակները, մանաւանդ իր աշակերտները կ'ընթանային անոր հետքերով:

Ան ջանացած էր աշակերտներուն պատուաստել ազգ. զօրեղ ջիղ մը, յատկանշական դրոշմը իր ժամանակի ոգիին:

Անոր մեկնումովը տնօրէնութեան պաշտօնը կը յանձնուի Կարապետ Պոտիկեանի (Թալասցի) որ տարի մը առաջ հրաւիրուած էր աւանդելու վարժարանին մէջ թուրքերէն լեզուն: Իրեն օգնական կ'ընտրուի վարժարանի ընթացաւարտներէն Սեդրաք Սէմիզեան: Ոյժ կը տրուի այդ միջոցին թուրքերէնի: Հայերէնի եւ պատմութեան առարկաները կը տկարանան Ամատունիի մեկնումով» (*Գաբրիէլ Թագւորեանի ձեռագիր*)։ *Սակայն իրմով արդէն հիմը դրուած էր կանոնաւոր դպրոցի մը, որ մինչև վերջը Ֆէնէսէցիք յաջողեցան պահպանել։*

*Կ. Պոտիկեանի մեկնումէն յետոյ վարժարանին տնօրէն ընտրուեցաւ 1893ին Էվէրէկցի Սարգիս Տօնիկեան, Երուանդ Երկաթի աշակերտներէն, որ նախապէս իբր առեւտրական կեանքի մէջ մարզուած, մասնաւոր ուղղութիւն մը կու տայ կրթութեան։* «Գործնական հով մը կը մտնէ վարժարանէն ներս եւ մասնաւոր հոգ կը տարուի հաւաքական դաստիարակութեան, ընկերցանութեան, վիճաբանութեան ձեւի տակ» *(Նոյն)։ Իրեն հետ Սեդրաք Սէմիզեան և Ռուբէն Պալեան երկու երիտասարդ ոյժեր կը պաշտօնավարէին իբր ուսուցիչ։*

1897*ին իրեն կը յաջորդէ Յովհաննէս Գունտուրաճեան, լեզուագէտ և գիտական պաշար ունեցող ուսուցիչ մը որ գործակցութեամբ Սեդրաք Սէմիզեանի և Յարութիւն Յոփանեանի դպրոցին մակարդակը կը բարձրացնէ, սակայն կը հանդիպի չկամութեանց և ըմբոստութիւն մը կը պայթի դպրոցին մէջ, և տղաք կը թողուն վարժարանը (Գաբ. Թագւորեանի ձեռագիր)։ Այս գայթակղեցուցիչ ցոյցին վրայ, Գունտուրաճեան կը հեռանայ* 1899*ին և իր տեղը պաշտօնի կը հրաւիրուի Յակոբ Թիմուրեան, իրեն օգնական ունենալով դարձեալ Ս. Սէմիզեանը և Գաբրիէլ Թագւորեանը, որ նոր կը մտնէր կրթական ասպարէզ (Նոյն)։*

*Նոր տնօրէնը,* «որ ժողովրդական դարձած էր իր թուրքերէն կրօնական քարոզներով քան թէ իր ուսուցչական կարողութիւնով, երկու տարի վերջ մեկնեցաւ Կեսարիա» *և իրեն յաջորդեց Սեդրաք Սէմիզեան որ* 1905*ին իր տեղը տուաւ Գաբրիէլ Թագւորեանի և ինքն մեկնեցաւ Էվէրէկ։ Գաբրիէլ Թագւորեան որ մինչև* 1908*, Օսմ. խաբեպատիր Սահմանադրութեան վերհրատարակութիւնը պաշտօնավարեց, Ուսումնարանի բաժինին մէջ իրեն աջակից ունէր՝ Տիգրան Տայեան և Զօրաբ Գավաֆեան, դպրոցին նախկին շրջանաւարտներէն։ Իսկ Ծաղկոցի մէջ, որ առանձին շէնքի մը մէջ էր, կը դասախօսէին Կարապետ Աւագեան (ձայնաւոր դասատու), Քերովբէ Թագուշեան, Յակոբ Ապաճեան։ Իսկ աղջիկներու վարժարանին մէջ Տիկ. Լուսի Քէօլէեան, Արմենուհի Շըխըրտըմեան, իսկ մանկապարտէզի մէջ Նշան Տօնիկեան և իր աղջիկը՝ Օր. Մարիանէ, գրեթէ ամէնքն ալ տեղացի։*

*Հակառակ բռնակալութեան հալածանքներուն կրցած էին Ֆէնէսէցիք շնորհիւ մասնաւորապէս իրենց Կ. Պոլիս գտնուող հայրենակիցներուն աջակցութեան, իրենց վարժարանը բաւական վիճակի մը մէջ դնել և հետզհետէ ըստ Կազմ. կանոնագրի բարձրագոյն նախակրթարաններու մէջ տրուած ուսման աստիճանին հաւասար ուսում մը տալ։ Այսպէս Մանկապարտէզը ունէր՝* 3*, Տար. Նախակրթարանը կամ Ծաղկոցը՝* 3 *և Միջին և Բարձր. Նախակրթարանը՝* 4 *տարուան ընթացք։ Հայերէն լեզուն՝ հին և նոր կ'աւանդուէր հիմնապէս։ Շրջանաւարտները կրնային բերանացի կամ գրաւոր բացատրել պէտք եղած չափով։ Նոյնպէս թուրքերէնի ու մաթեմաթիքի մէջ յաջող էին։ Ֆրանսերէնը տկար էր միշտ։ Իսկ գիտութեան դասերու արդիւնքը համեմատական էր դասախօսին կարողութեան։ Աղջիկներու վարժարանը առանձին հաստատութիւն մըն էր և ունէր տարրական և միջին դասարաններ միայն (Գաբրիէլ Թագւորեան, Նոյն)։*

*Իսկապէս անոնք ըմբռնած ըլլալ կը թուէին կրթութեան և դաստիարակութեան կարեւորութիւնը։* «1885էն առաջ, դպրոց յաճախողներու թիւը քիչ էր: Խանութպաններու զաւակները կամ լաւ ձայն ու ակնառու ընդունակութիւն ունեցող տղաք միայն կ'աշակերտէին վարժարանին: Առաջինները գործի մէջ իրենց հարկաւոր գիտելիքները (գրել եւ հաշուել) ուսանելու, իսկ միւսներն ալ դպիր-ուսուցիչ պատրաստուելու եւ օգնելու համար եկեղեցւոյ երգեցողութեան: Ամատունիի շրջանէն սկսեալ, դպրոց յաճախելը պարտաւորիչ դարձած էր իրենց: Ամէն ծնող պարտականութիւն կը համարէր իր զաւակը կարդացնել, մարդ ընել: Մեծերը գործի, պզտիկները ուսումի: Ահա նշանաբանը, որուն կը հետեւէին այդ շրջանին: Սակայն այս չի նշանակեր որ ամէն տղայ առաջին օրէն կամովին յանձնառու էր դպրոց երթալու եւ հոն ժամերով բանտարկուելու: Հեստ եւ անզուսպ տղաք պակաս չէին, որոնք կը նախընտրէին դաշտերու եւ պարտէզներու արձակունակ կեանքը, դպրոցի սահմանափակ անշարժութենէն: Հայրերը, մասնաւորապէս մայրերը, առտուն իրենց հսկողութեան տակ դպրոց կ'առաջնորդէին իրենց փախուստի հակամէտ զաւակները եւ դաստիարակին կը յանձնէին զանոնք: Հետզհետէ սակայն, այս երեւոյթն ալ անհետացաւ, մանչերու դպրոց յաճախելը իբրեւ անհրաժեշտ սովորոյթ մուտ գործած ըլլալով Հայ բարքերուն մէջ:

Ամբողջ աշակերտութեան թիւը 1908 շրջանին հասած էր 750ի, հետեւեալ բաժանումներով. մանկապարտէզ՝ երկսեռ 220, ծաղկոց՝ 210 մանչ, ուսումնարան՝ 150 մանչ. աղջկանց նախակրթարան 170 աղջիկ: Վարժարանին մէջ մանչերը գրեթէ 15o/o աւելի էին միշտ աղջիկներէն: 412 մանչի դէմ 338 աղջիկ, որովհետեւ բոլոր աղջիկներն ալ դպրոց չէին յաճախեր եւ յետոյ իրականութեան մէջ աղջիկներու թիւը նուազ էր մանչերէն 5o/o համեմատութեամբ» *(Գաբրիէլ Թագւորեանի ձեռագիր)։*

*Ֆէնէսէցիք՝ զոհողութիւն ընել ալ սորվեցան շնորհիւ Ամատունիի նախաձեռնութեան և դպրոցին պիւտճէն հետզհետէ բարձրացուցին։* 1905-1908 *տարիներուն դպրոցին տարեկան պիւտճէն* 240-250 *ոսկի էր։ Ամսական* 20 *ոսկիի չափ, որ կը կազմէր ուսուցիչներու թոշակը։ Կ. Պոլսոյ Ռուբինեան Միութիւնը տարուէ տարի կը հոգար* 60 *ոսկի։ Անշարժ կալուածներէ —խանութ, սրճարան— կը գոյանար* 120 *ոսկի մօտաւորապէս։ Եկեղեցւոյ հասոյթներէն, իւղագին և այլ, վարժարանին կը տրուէր* 40 *ոսկիի չափ։ Կը մնար հայթայթել մնացեալ* 40-50 *ոսկին։* «Ահա դժուարին հանգոյցը: Հայրերը կը դժկամակէին թոշակ վճարելու: Մանաւանդ բարեկեցիկ դասը, քիչ բացառութեամբ, կը խուսափէր միշտ իր սեփական պարտքը հատուցանելէ եկեղեցիին կամ դպրոցին»(1) *(Գաբ. Թագւորեանի ձեռ.)։ Վարժարանին պիւտճէն այսպէս ամէն տարի բաց կ'ունենար որոշ գումար մը, որ տարուէ տարի իրարու վրայ բարդուելով կը կազմէր կարեւոր պարտք մը։ Թաղական ու Հոգաբարձու անկարող կ'ըլլային դարման մը տանելու այս դժբախտ կացութեան։ Տուժողները կ'ըլլա-*

---

(1) *Գաբրիէլ Թագւորեան (Նոյն) կ'ըսէ թէ «այս պարտազանցութիւնը այնպիսի ըմբոստացուցիչ վիճակի մը հասած էր որ* 1908*ի Սահմանադրութեան ազատութենէն օգտուելով խումբ մը սրտցաւ երիտասարդներ Միութիւն մը կազմած էին իրենց մէջ, նպատակ ունենալով միայն, ամէն գնով հարուստներէն գանձել եկեղեցւոյ պահանջները։ Այս կազմակերպութիւնը կոչուած էր* Անձնուէրներու Միութիւն: 1915*ին, սարսափի օրերուն, այս միութեան անդամները կը ձերբակալուին իբր անձնուէրներ (ֆէտայի) և անոր* 4-5 *անդամները կախաղանով կը քաւեն այս անունի թիւրիմացութիւնը»։*

յին միշտ ուսուցիչները։ որոնք ամիսներով ամսականի երես չէին տեսներ և կ'ապրէին խեղճութեան մէջ։

«Նիւթական այս մտահոգութիւնը կ'անդրադառնար բնականօրէն վարժարանի ներքին կեանքին վրայ եւ կը ջլատէր անոր յառաջդիմութիւնը» (Նոյն)։

Վարժարանի պաշտօնէութիւնը հակառակ շրջապատող աննպաստ և յաճախ յուսահատեցուցիչ նիւթական և բարոյական պայմաններուն, բարեխղճօրէն կ'աշխատէր, և չէր յուսալքուած։ Ուսուցիչները իրենց պաշտօնը կը նկատէին կրթական առաքելութիւն մը և կարելին կ'ընէին տղոց մտաւորական և բարոյական զարգացման համար։ «Նեղուած գաւառի մէկ խուլ անկիւնը, լոյսէ եւ օգնութենէ հեռու, զուրկ զարգացման եւ տարրական միջոցներէ, ան աշխատած էր անդուլ իր ինքնակրթութեան եւ միաժամանակ վարժարանի յառաջդիմութեան: Գրադարաններու, թերթերու չգոյութեան ան ջանացած էր դարման տանիլ իր ճղճիմ թոշակներէն. յատկացումներ ընելով գիրքի եւ թերթի: Շնորհիւ իր անխոնջ եռանդին եւ կամքին, ես չէր մնացած ժամանակին պահանջներէն եւ միշտ տեղեակ մնացած էր ժամանակին ազգային գրական եւ այլ շարժումներուն: Սակայն յաճախ անտանելի եղած էին տիրող նիւթական եւ բարոյական պայմանները եւ ուսուցիչը հեռացած էր այդ միջավայրէն, մարդկայնօրէն դառնացած: Այս պատճառով պաշտօնէութեան փոփոխութիւնը յաճախադէպ եղած էր, ի վնաս վարժարանի բարեկարգութեան եւ յառաջդիմութեան» (Գաբ. Թագուորեանի ձեռագիր)։

Այսպէս 1880ական թուականներուն վերջերը Հ. Ամատունիով սկսած շարժումը, անխափան շարունակուած էր մինչև 1908, հետզհետէ աւելի զարգանալով, աւելի կազմակերպուելով և աւելի հիմնաւորուելով, մինչ տեսանք որ Էվէրէկցիք, Երուանդ Երկաթի հեռանալէն յետոյ իրենց դպրոցը խամրոցի վերածած էին, զայն թողլով Տէր Թոդիկեան դրութեան հետեւող պատուելիներու ձեռքը։

Մասնաւորապէս՝ Էվէրէկցի աղաներու յիմար փառասիրութիւնը, փառաւոր այլ բազմածախս եկեղեցի մը կանգնելու համար, մեծապէս վնասեց կրթական գործին, ամէն ուշադրութիւն կեդրոնացնելով եկեղեցիին վրայ, որուն շինութիւնը շատ սուղ արժած է իրենց։

Աղաները՝ արդէն չկամութիւն ունէին դպրոցին համար ուր Կարապետ աղա Լաչինեանի սորվեցուցած Նարեկի և Տ. Կարապետ քհ. Մելէքեանի թուրքերէնի ընթերցումները լիուլի բաւական կը համարէին։ Սակայն Ֆէնէսէի վարժարանին արդիւնքները Էվէրէկի երիտասարդներուն նախանձը կը գրգռէին։ Անոնք անհանգիստ էին տեսնելով իրենց դպրոցին տխուր վիճակը։ Ուստի իրար անցան և ուզեցին տնօրէնի ընտրութիւնը իրենք կատարել և 1897ին ընտրեցին Կեսարացի Յակոբ Թիմուրեանը որ աշխատեցաւ կարգաւորել և կանոնաւորել դպրոցը։ Այս եռանդուն երիտասարդը ամէն Կիրակի լսարանին մէջ ալ կը խօսէր և ժողովուրդէն շատ սիրուած էր։ Զօջ աղաները ուրիշ միջոց չգտան զինքը փախցնելու, եթէ ոչ սպառնալ զինքը կառավարութեան մատնել զրպարտութեամբ։ Յակոբ Թիմուրեան թողուց Էվէրէկը և անցաւ Ֆէնէսէ։

1899ին Էվէրէկցիք հրաւիրեցին Կ. Պոլիս բարձրագոյն ուսում առած տեղացի Կարապետ Գալայճեանը, որ չորս տարի պաշտօնավարեց, Տիկ. Լուսիկ Քէօլէեանի հետ, որ աղջիկներու բաժինը կը կառավարէր։

Գալայճեանի յաջորդեց 1904ին Եղիա Հայկունի որ միայն մէկ



տարի մնաց։ Անոր յաջորդեց Սեդրաք Սէմիզեան Ֆէնէսէցին, որ Ամատունիի աշակերտներէն էր և ապա Սարգիս Տօնիկեանը (1905)՝ որ Երուանդ Երկաթի աշակերտն էր։

Դպրոցավարութեան մէջ արդէն ի Ֆէնէսէ կարողութիւն ցոյց տուող այս անձը Էվէրէկի դպրոցին ալ հաւանօրէն պիտի օգտակար ըլլար եթէ նոր բացուած թրքական Ռիւշտիէ վարժարանին ուսուցիչներէն մին վարժարան այցելելով, տղաքը հարցափորձած և Հայաստանի մասին իր ըրած հարցումներուն ստացած պատասխանները առիթ բռնելով, Գայմագամին պահանջ դրած չըլլար անոր անմիջական հեռացումը որ կատարուեցաւ։

1908ին Արիս Սաղըրեան և իր տիկինը, ինչպէս նաև Հայկազուն Յակոբեան, կը վարէին Էվէրէկի վարժարանը երբ Օսմ. Սահմանադրութիւնը հռչակուեցաւ և Աղաներուն ազդեցութիւնը խորտակուեցաւ։

Թէ՛ Ֆէնէսէի և թէ՛ Էվէրէկի, ինչպէս Կեսարիոյ բոլոր վիճակին մէջ, Օսմ. Սահմանադրութեան խաբուսիկ հմայքին տակ, վերազարթնումը կ'ըլլայ իսկապէս հսկայական և Հայ ժողովուրդը միամիտ իր խանդավառութեան մէջ ամէն ջանք կ'ընէ իր դպրոցներուն զարկ տալու համար։

Հայկազուն Յակոբեան մինչև 1912 կը պաշտօնավարէ Էվէրէկի մէջ, այդ թուականէն յետոյ իր տեղը տալու համար կրկին Սեդրաք Սեմիզեանի և Սեդրաք Դարակէօզեանի որոնք մինչև տեղահանութիւն կը մնան պաշտօնի վրայ։ Աշակերտներու թիւը կը բարձրանայ 950ի միայն Էվէրէկի մէջ։

Իսկ Ֆէնէսէցիք, 1908ին երբ Գաբրիէլ Թագուորեան Կեսարիա կը մեկնի, փափաք կը յայտնեն հրաւիրել կրկին իրենց կրթական վերածննդեան առաջին գործաւորը՝ Մեսրոպ վրդ. Ամատունին, որ Սիսի վանքէն կ'աճապարէ իր հին պաշտօնին գալ և ստանձնել գործ մը որուն մէջ այնքան փայլուն յաջողութիւն ունեցած էր ժամանակին։

Սակայն այս անգամ յուսախաբ կ'ըլլայ որովհետև դարձեալ կ'ուզէ կիրարկել իր հին ինքնիշխան վարուելակերպը, առանց նկատի առնելու որ ինչպէս սերունդը, նոյնպէս նաև ժողովուրդին մտայնութիւնը փոխուած էր հիմնովին։ Հանրային կարծիքը անհանդուրժելի կը գտնէ անոր քմահաճ գործունէութիւնը և դպրոցական գործին ալ անընդունակ կը համարէ զինքը։ Խռովութիւն մը ծայր կուտայ ժողովուրդին մէջ։ Վարդապետը նեղը մնացած, տեղի կուտայ և կը հեռանայ։ Ֆէնէսէցիք վարժարանին տնօրէնութեան կը հրաւիրեն Կարապետ Ոսկանեանը, որ երկու տարիներու ամուլ պաշտօնավարութենէ մը յետոյ կը հեռանայ։ 1911ին, ժողովուրդը զզուած տիրող խռովայոյզ կացութենէն և վերջ մը տալու համար վարժարանին անկերպարան վիճակին, կը դիմէ դարձեալ Գաբրիէլ Թագուորեանի որպէսզի վերստանձնէ վարժարանին տնօրէնութիւնը։ Դժբախտաբար այս անգամ կարճ պաշտօնավարութենէ մը յետոյ Գ. Թագուորեան իր կնոջ Տիկ. Գայեանէի — որ աղջիկներու վարժարանին մէջ պաշտօն ունէր— հիւանդութեան պատճառով կը պարտաւորուի փոխադրուիլ Թալաս, ուր կ'ստանձնէ Կիւլպէնկեան մանչերու վարժարանին տնօրէնութիւնը։ Իսկ Ֆէնէսէի Ռուբինեան վարժարանին վարչութիւնը կը յանձնուի Տիգրան Տայեանի, ընկերակցութեամբ Զօրաբ Գավաֆ-

եանի և Կարապետ Իւսկէնտէրեանի, որոնք գործի գլուխ կը մնան մինչև 1915 (Գ. Թագւորեանի ձեռագիր)։

Թէ՛ Էվէրէկցիք և թէ՛ Ֆէնէսէցիք օգտուելով Օսմ. Սահմանադրութեան ընծայած պատեհութենէն իրենց դպրոցներուն զարգացման կ'աշխատին։

Անոնք նոյնիսկ օտարութեան մէջ, ուր հիմա ազատօրէն կրնային երթալ բախտ փնտռելու, չէին մոռնար իրենց վարժարանները, որոնց կը պարտէին իրենց մտային պաշարը և մանաւանդ բարոյական դիմագծութիւնը։

Ֆէնէսէցիք Ամերիկայի մէջ կը վերակենդանացնեն իրենց Ռուբինեան Ուսումնասիրաց ընկերութիւնը։ Ամէնն ալ կ'անդամակցին անոր և իրենց նիւթական օժանդակութիւնը կ'ընծայեն առատօրէն։ Էվէրէկցիք նոյնպէս կը կազմեն Մեսրոպեան միութիւնը Ամերիկայի մէջ և կ'օգնեն իրենց ծննդավայրին վարժարանին, և նոյնիսկ Էվէրէկի շրջակայ պզտիկ գիւղերուն։

Էվէրէկցիք և Ֆէնէսէցիք Օսմ. Սահմանադրութեամբ ստեղծուած այս խանդավառ մթնոլորտին մէջ մոռցած հին ատելութիւնները և հնօրեայ քէները, ձեռք ձեռքի կու տան նոյնիսկ միացեալ ոյժերով հիմնելու համար Ս. Կարապետի վանքին վարժարանին համաստիճան վարժարան մը, աջակցութեամբ արտասահման գտնուող հայրենակիցներու, մասնաւորապէս Ամերիկա հաստատուողներու որոնք հոն հիմնած էին Մեսրոպեան և Ռուբինեան ընկերութիւնները։

Սակայն այս գեղեցիկ ծրագիրները չքացան բոլորովին, վասնզի Ընդհանուր Պատերազմը՝ գեղեցիկ առիթ մը եղաւ Թուրքերու համար հարուածելու բովանդակ Հայութիւնը, որուն դիրքը և յառաջդիմութիւնը Թուրքին նախանձին ու ատելութեան գլխաւոր շարժառիթներն էին։ Ազգայնամոլ Թուրքերը չէին կրնար հանդուրժել Հայերու դժնդակ աշխատանքով և արիւն քրտինքով շահած նիւթական բարեկեցութեան, մանաւանդ երբ անոր առընթեր կը նշմարէին նաև բարոյական ու մտաւորական գերազանցութիւնը Հայ մարդուն։

Այս թոհուբոհին նաև զոհ գնաց չէնչող, առոյգ ու գործունեայ Էվէրէկ-Ֆէնէսէն։ Արիւնկզակ Ջէքին որ 1915ին սկիզբները, քաղաքին Հայ թաղերը և Հայ գիւղերը քննութենէ կ'անցնէր իր պտոյտներու ընթացքին, նախանձով թունաւորուած, պոռացած էր Թուրքերու երեսին. — «Դուք տիրող ազգն էք այս երկրին, եւ չունիք գիւղերու մէջ սենեակ մը, ուր կարելի ըլլայ հանգչիլ, քաղաքի մէջ տուն մը, ուր կարելի ըլլայ բնակիլ, մինչդեռ բոլոր Հայ տուները՝ գիւղերու թէ քաղաքներու մէջ նորաշէն են եւ հանգստաւէտ: Պէտք է ջնջել այս պատկերը: Դուք պէտք է տէր դառնաք Հայերու տուներուն, կալուածներուն եւ նիւթական միջոցներուն» (Գաբ. Թագւորեանի ձեռագիր)։

Արդարև Թուրքերը շրջեցին այդ պատկերը, անլուր ոճիրով մը, որուն նմանը շատ քիչ անգամ արձանագրած է պատմութիւնը, և ի գին ամէն բանի, նոյնիսկ ի վնաս իրենց երկրին, զոր աւերակի մը վերածեցին։

Էվէրէկ-Ֆէնէսէ եւս աւերակ մը և անապատ մը դարձաւ։

Սակայն Զինադադարէն յետոյ հոն մնացող և տարագրութենէն վերադարձող սակաւաթիւ Հայերը, հայկական անվհատ հաւատքով վերստին բացին իրենց եկեղեցին՝ առանց քահանայ ունենալու և



դպրոցը՝ առանց վարժապետ (1918)։ Հազիւ Էվէրէկցիք վերադարձող ուսուցիչ մը, Սեդրաք Գարակէօզեանը գտան — որ ատեն մը շարունակելէ յետոյ մեկնեցաւ Բարիզ — և ուսուցչուհի մը՝ Տիկ. Լիւսիկ Քէօլէեանը, — որ նոյնպէս ժամանակ մը յետոյ հեռացաւ։

Քիչ յետոյ արդէն Քէմալական կառավարութիւնը գրաւեց դպրոցը և վերջ տուաւ ամէն բանի։

Էվէրէկ-Ֆէնէսէ՝ իբր կեդրոն Անդր-Արգէոսեան շրջանին, շրջակայ վայրերու համար եղած է ուսումնական կեդրոն մը, վասնզի իր շուրջը գտնուող պզտիկ գիւղերը (Իլիպէ, Ինճէ-Սու, Գարաճա-Էօրէն կամ Գարաճա-Վերան, Մուսա-Հաճըլը, Էյլէզի) ունեցած են թէև իրենց շատ նախնական վարժոցները, —յաճախ միակ վարժապետով մը— սակայն այդ գիւղերու ընդունակ աշակերտները օգտուած են Էվէրէկի և Ֆէնէսէի վարժարաններէն։ Նոյնիսկ Էվէրէկցիք նպաստած են նիւթապէս այս գիւղերու վարժարաններուն, անոնց կառուցումին և մատակարարութեան՝ դրամով օգնելով։

Իսկ Զօմախլու որ մեծ ու բազմամարդ և զուտ հայաբնակ գիւղ մըն էր, ունեցած է կրթական կեանք մը, նման միւս գիւղերու, ինչպէս արդէն տեսնուեցաւ (էջ 840), վասնզի 1840էն սկսեալ հոն տեղւոյն քահանաները իրենց գիւղին տղոց գրել կարդալ սորվեցուցած են, մինչև որ կարելի եղած է երկու թաղերուն մէջ ստեղծել, բաւական ուշ՝ երկու վարժարաններ՝ որոնք 1906էն յետոյ Ամերիկայի մէջ Զօմախլուցիներէն կազմակերպուած Զօմախլուի Ազգ. Կրթասիրաց Միութեան նպաստներով, աւելի կանոնաւորուեցան։

3. ԿԷՕՍԹԷՐԷԻ ՇՐՋԱՆԱԿ.— Այս շրջանակին մէջ հին միակ աւանն է Թոմարզա, իսկ անոր շուրջը, և յաճախ Թոմարզացիներէն հաստատուած գիւղերը, բոլորովին նորաշէն էին, և հազիւ կրցած հաստատել աննշան վարժոցներ, յաճախ խեղճ թոշակներով ողորմելի վարժապետներով։ Հակառակ անոր որ Թոմարզայի Ս. Աստուածածին վանքը փայլուն անցեալ մը ունեցած էր իբր կրթական օրրան մը, Կէօսթէրէի շրջանը Կեսարիոյ առաջնորդութեան ամէնէն յետամնաց շրջանակը եղած է կրթական տեսակէտով։ Թոմարզայի մէջ ալ, հակառակ անոր որ վանքին մէջ գոյութիւն ունեցած էր դպրոց մը ուր 15-20 երիտասարդներ քիչ շատ ուսում կ'առնէին, ապահովաբար գոյութիւն ունեցած է անցեալ դարուն սկիզբէն, դպրոց մը ուր տղաք քահանայէ մը կամ լուսարարէ մը կարդալ գրել կը սորվէին։

1837ին անոնք կառուցին իրենց եկեղեցիին հետ վարժարան մը, որ մինչև տեղահանութիւն իր գոյութիւնը պահեց (տես վերը, էջ 858-859), առանց սակայն շատ փայլուն վիճակ մը ունենալու։

⁂

Կեսարիոյ վիճակին երեք շրջանակները, ինչպէս տեսնուեցան գրեթէ իրենք իրենց մէջ ամփոփուած, իրենց սեփական միջոցներով ճիգ ըրած են, տեղական վարժարանները հոգալու։ Ինչպէս շատ իրաւացիօրէն դիտել կու տայ Պ. Գաբրիէլ Թագւորեան, «չէր եղած երբեք շրջան մը ուր Կեսարիոյ Առաջնորդարանը հետաքրքրուէր իր թեմի վարժարանի կամ եկեղեցւոյն գործերով եւ ջանար դարման մը տանիլ անոր նիւթական կողմերուն: Գաւառը իր բախտին ձգուած էր եւ հարուստները օգտուելով այդ անիշխանական վիճակէն, իրենց քմահաճոյքը պարտադրած էին

անոր՝ իբրեւ Սահմանադրական օրէնք: Ժողովուրդը կը վախնար ձայն բարձրացնելէ, ինչպէս կառավարութեան ապօրինութիւններուն, նոյնպէս հարուստներուն բռնատիրութեան դէմ, որովհետեւ այս վերջիններուն վրէժխնդրութիւնը կրնար քանդել իր տունը եւ մոխիրի վրայ նստեցնել զինքը»:

Նոյնիսկ Տրդատ եպ. Պալեանի առաջնորդութեան շրջանին, վիճակին կեդրոնը շատ քիչ շահագրգռուած էր թեմին ենթակայ քաղաքներուն եւ գիւղերուն վարժարաններով, որոնք իրապէս բախտին ձգուած վիճակ մը կը ներկայացնէին։

Տրդատ եպ. Պալեան, մինչեւ իր ծուծը գործնական կեսարացի, խորապէս համոզուած էր թէ անկարելի էր կրթական գործը վարել ժողովներով եւ խորհուրդներով, եւ ասոր համար իր վիճակին կրթական վերածննդեան գործին համար աշխատեցաւ ուրիշ ճամբով մը։

Ամէն ջանք ըրաւ մէկ կողմէն Ս. Կարապետի վարժարանը պահել իր բարձրութեան մէջ, ունենալու համար պատրաստուած ուսուցիչներ, եւ միւս կողմէն՝ աշխատեցաւ բարձրացնել վարկը եւ հեղինակութիւնը ուսուցչութեան, զայն պաշտպանելով մեծ-աղաներու քմահաճոյքներուն դէմ, քաջալերելով անոնց կազմակերպութիւնը, ինչպէս պիտի տեսնենք ընկերութիւններու եւ միութիւններու վրայ խօսուած ատեն։

Այս գործնական ուղղութեամբ անիկա կը յուսար խորտակել կամայականութիւնները։ Իր հակառակորդները՝ իր մեկնումէն յետոյ, իբր թէ աւելի զարկ տալու համար կրթական գործին ձեռք առին նոր մեթոտներ եւ խիստ կեդրոնացում մը ստեղծելու համար, վիճակին 35 դպրոցներուն վրայ հսկողութիւն կատարելու եւ դպրոց չգտնուած տեղերն ալ վարժարաններ բանալու համար կրթական տեսչութիւն մը ստեղծեցին, 1910ին, սակայն արդիւնքի տեսակէտով չկրցան առաւելութիւն մը ձեռք բերել։ Աղայական քմահաճոյքին տեղ այս անգամ եկաւ տիրել ուրիշ կամայականութիւն մը, աւելի վտանգաւոր եւ աւելի մոլեգին, կուսակցականը, քաղաքական դաւանանքները շահագործող ասպետներու եւ կուսակցականութիւնը՝ արհեստ, գործ եւ զբաղում դարձնողներու շահախնդիր միջամտութիւնը կրթական գործերու մէջ, որ վնասեց մեր կրթական գործին ինչպէս ամէն տեղ նոյնպէս նաեւ Կեսարիա, ուր ինչպէս ըսուեցաւ, յաճախ ուսուցիչները, հացի խնդրոյն համար կուսակցութեան մը ապաւինեցան եւ փոխանակ ինքզինքնին զարգացնել աշխատելու, աւելի ջանք ու ճիգ ըրին, իրենց պատկանած կուսակցութիւնը զօրացնելու եւ անոր յաղթանակը ապահովելու, որպէսզի իրենց պաշտօնավարութիւնը տեւականացնեն։ Այսպէս, կերպով մը մասամբ վնասուեցաւ մեր կրթական գործը, 1908էն յետոյ, երբ սեղմումները ջնջուած ըլլալով ամէն հնարաւորութիւն կար իսկապէս կրթական գործին տալու մեծ զարկ։

Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ երբ կապանքները վերցան, նաեւ դպրոցներու ներքին կարգապահութիւնը վտանգուեցաւ, վասնզի ուսանողները արտաքին աշխարհին ազդեցութեան տակ սանձարձակութիւններ գործել սկսան, եւ խլրտումներ եւ ըմբոստութիւններ յարուցին։

Ուսանողական Միութիւններ՝ կուսակցական դրօշմով, եւ դուրսէն ղեկավարուած դպրոցներու կարգապահութեան խանգարումին նպաստ-



տող ազդակներ եղան, վասնզի խառնուեցան դպրոցին գործերուն եւ իրենց կամքին հպատակեցնել ուզեցին դպրոցին վարիչները։

Կուսակցական խմորումը դպրոցէն ներս, պատճառ եղաւ որ ուսանողները փոխանակ ինքնամփոփ իրենց դասերուն նուիրուելու իրենց դպրոցական դասերէն դուրս ուրիշ նիւթերու շահագրգռութիւնը ունենան եւ նոր վարդապետութիւններու եւ գաղափարներու ծանօթանալու համար ոյժ սպառեն։ Կրթական ու կարգապահութեան տեսակէտով այս վնասներու առընթեր Օսմ. Սահմանադրութեան բարիքը եղաւ անկաշկանդ գործունէութիւնը Հայ տարրին եւ իր ջանքերուն թռիչք ու ճախրանք ստանալը, դպրոցին ու կրթութեան կարեւորութեան անգամ մըն ալ շեշտուիլը, եւ անոր համար ազատօրէն աշխատուիլը։

## Ը.

## ԿՐԹԱԿԱՆ ՄՇԱԿՆԵՐ

Կեսարիոյ վիճակին Հայ բնակչութեան կրթական շարժման վրայ տրուած այս տեղեկութիւնները ամբողջացնելու համար հարկ կը համարեմ ներկայացնել նաեւ գլխաւոր կրթական մշակները որոնք աշխատած են Կեսարիոյ եւ իր թեմերուն մէջ: Այս համեստ աշխատաւորները՝ որոնք մտքերու լուսաւորութեան գործին գլխաւոր դերակատարները եղած են, յաճախ պանիր-հացով ապրելու զրկանքին եւ քաղաքներու եւ հոգաբարձուներու արհամարհանքին — եւ ինչո՞ւ չըսել— նաեւ անարգանքին առարկայ ըլլալով, ամէն կերպով արժանի են երախտագիտութեանը՝ համայնքին, որուն մտաւոր վերելքին առաջնորդները եղած են, միշտ գրեթէ զոհողութեամբ եւ գաղափարականով մը ծառայելով նորահաս սերունդներու դաստիարակութեան գործին: Սակայն անոնք գրեթէ միշտ մոռցուածներ եւ անտեսուածներ եղած են, հակառակ անոր որ Հայ ազգային վերածննդեան շէնքը կառուցանողները իրենք եղած են:

Վարժապետն էին որ կերտեցին մեր ազգութիւնը վերջին մէկուկէս դարերու ընթացքին եւ իր դարաւոր թմրութենէն սթափեցուցին այս ժողովուրդը:

Կեսարիա՝ մասնաւորապէս անոր թրքախօս շրջանները, շատ բան կը պարտին այս վարժապետներուն: Հետեւաբար կ'արժէ որ ներկայացնենք կեանքը եւ գործը անոնց որոնք ի գին ամէն կարգի զոհողութեանց, սերունդներ դաստիարակած են եւ ժողովուրդին որքան մտաւոր զարգացման նոյնքան անոր տնտեսական բարօրութեան եւ յառաջդիմութեան նպաստած են:

Դժբախտաբար իմ տեղեկութիւններս որ կրցած եմ ձեռք բերել, հեռու են լիակատար ըլլալէ: Սակայն գոհանալով գտնուածովը՝ պիտի ջանամ ներկայացնել ծառայութիւնները կրթական մշակներուն որոնք գործած են Կեսարիոյ եւ շրջակայից մէջ: Շատ կը ցաւիմ որ իրենց կեանքին եւ գործին վրայ իմ ծանօթութիւններս այնքան հատակոտոր ու մասնակի են որ կարելի չեղաւ՝ տրամաբանօրէն պահանջուած կարգով՝ ժամանակագրական դասաւորմամբ թուել, ուստի նախընտրեցի այբուբենականը, իսկ բոլորովին բաց թողուցի անոնք որոնց միայն անուններուն հանդիպած եմ առանց կենսագրական ծանօթութեան:

ԱԲՈՒԼԵԱՆ ԳԷՈՐԳ.— Կեսարիոյ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին տնօրէն (1912–1913), փափուկ ժամանակի մը մէջ, երբ դպրոցը կը գտնուէր քայքայման սպառնալիքի տակ։ Խանգարուած կարգապահութիւնը վերահաստատելու տեսակէտով մեծ ծառայութիւն մատուցած է Կեսարիոյ այս պանծալի հաստատութեան։ Կեսարիոյ շրջանակէն դուրս անիկա արդէն կրթական պատկառելի անցեալ մը ունէր երբ հոն կոչուեցաւ։



Ծնած է Թիֆլիս 1856ին։ Զաւակն էր մետաքսի առեւտրականի մը, որ գործերու ձախողութեան պատճառով նիւթական անձկութեան մատնուած էր ամբողջ ընտանիքով։ Ծնողքը կ'ուզէ զինքն արհեստի մը դնել սակայն ինք, տակաւին 7 տարեկան մանուկ կը հակառակի, և կը մասնակցի Ներսէսեան դպրոցի մտից քննութեան, և կը յաջողի մտնել հոն շնորհիւ իր համարձակախօսութեան։ Ներսէսեան վարժարանի ընթացքը կը բոլորէ, իբրև շատ յաջող աշակերտ մը։ Յետոյ կ'ըլլայ Մկրտիչ Սանասարեանի սան և Եւրոպա կը ղրկուի իր ուսումը կատարելագործելու համար, և երկար տարիներ կը նուիրուի բարձրագոյն ուսման։ Սանասարեանի կարգադրութեամբ նոյնպէս բարեբարին սաներէն Սողիկեանի հետ քննական ուղեւորութիւն մը կը կատարէ Թրքահայաստանի մէջ, տեղական պայմանները ուսումնասիրելու համար։ Իրենց քննութեան իբր եզրակացութիւն Սանասարեան վարժարանը կը բացուի Կարնոյ մէջ, տեսչութեամբ իրեն, Սողիկեանի և Մատաթեանի։ Աբուլեան ունէր խոր և բազմակողմանի հմտութիւն։ Ծանօթ էր գերմաներէնի, ֆրանսերէնի, անգլիերէնի, ռուսերէնի, վրացերէնի, ինչպէս նաև հին լեզուներէն յունարէնի և լատիներէնի։ Վերջը սորվեցաւ նաև բաւականաչափ թուրքերէն։ Մասնագիտութիւնն էր աշխարհագրութիւն, ընդհ. ազգաց պատմութիւն, աստեղագիտութիւն, բնական և ուսողական գիտութիւններ, երաժշտութիւն, նկարչութիւն և գծագրութիւն։

Ծանօթ էր նաև միջազգային գրականութեան գլուխ-գործոցներուն։ Որքան լաւ ուսուցիչ, նոյնքան վարպետ մանկավարժ էր և հոգեբան։ Բազմաթիւ ձեռագիր գործեր ունի, մեծ մասամբ իր Սանասարեանի դասաւանդութեանց առթիւ պատրաստուած, ինչպէս Հայրենագիտութիւն, Աշխարհագրութեան դասընթացք, Ուսումնական Աշխարհագրութիւն, Օդերեւութաբանական օրագրութիւն մը, Հերոդոտոսի պատմութեան ամփոփոյքը, և Հռոմէական պատմութիւն:



Վաստակաւոր ուսուցիչ։

Մեռաւ 1933 Սեպտ. 16ին Բարիզ (տես Կեանք եւ Արուեստ Տարեգիրք, 1934, էջ 149–150)։

ԱԲՐԱՀԱՄԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Կեսարացի. Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանի 1906ի շրջանաւարտներէն։ 1906–1909 նոյն վարժարանին մէջ ուսուցչական պաշտօն վարած է դասախօսելով թուրքերէն և ուսողութիւն։ Յետոյ հրաժարելով, մտած է առեւտրական ասպարէզ։ Այժմ Կ. Պոլիս՝ վաճառական։



Հմայեակ Ուղուրլեանի հետ աշխատակցելով պատրաստած են ուսումնասիրութիւն մը, «Կեսարիոյ Ս. Կարապետի վանքը, Բարձրագոյն վարժարանը եւ Տրդատ եպ. Պալեան» խորագրով (Ընդարձակ Տարեցոյց, 1928, էջ 221–262)։

ԱԲՐԱՀԱՄԵԱՆ ՎԱՐԴՈՒՀԻ (ՏԻԿ.).— Ծնած է 1894ին Մունճուսուն։ Դուստր Կարապետ Տէր Մովսէսեանի։ Իր նախնական կրթութիւնը առած է Թալասի Աղջիկներու Ամերիկեան վարժարանին մէջ իսկ բարձրագոյն կրթութիւնը Մարզուանի Աղջիկներու Ամերիկեան Գոլէճին մէջ։ 1910–1912ին գլխաւոր ուսուցչուհին եղած է Բողոքականաց աղջիկներու Բարձր. վարժ.ին։



1919էն 1928 վարած է տեսչութիւնը Ամերիկեան Ռըլիֆի որբանոցներուն նախ Գոնիա և յետոյ՝ Սիւրիա։ 1929ին իբր գնահատութիւն իր բարւոք պաշտօնավարութեան, նոյնիսկ Ռըլիֆի կողմէ ղրկուած է Լոնտոն, հետեւելու համար մանկաբարձութեան որուն վկայականը ձեռք բերած է պատուով G. M. B. տիտղոսով։ Հիմա կը պաշտօնավարէ Աղեքսանդրիոյ Քաղաքապետութեան Մայրանոցին մէջ։

ԱԲՐԱՀԱՄ ԽԱԼՖԱ.— Յիշուած է թէ Ս. Լուսաւորիչ թաղի մէջ պաշտօնավարած է Աբրահամ Խալֆա անուն ուսուցիչ մը, որ կը կարծեմ թէ Գարա Մէրճան և Էնվէր Խալֆա մականուանուած նոյն թաղին մէջ գործող երկու վարժապետներէն մէկուն իսկական անունն է (տես նոյն անունները)։

ԱԴԱՄԵԱՆ ՄԵՐԿԵՐԻՈՍ.— Թալասցի, աշակերտ Կէրմիրի Պարթեւեան վարժարանին փայլուն շրջանին։ 1875ին տնօրէն եղած է Ֆէնէսէի վարժարանին ուր կը պաշտօնավարէ 6-7 տարիներ։ Կը դասախօսէր Ուսումնարանին մէջ հայերէն գրաբար, թուրքերէն և թուաբանութիւն։ Հասուցած է բազմաթիւ աշակերտներ Ֆէնէսէի մէջ։ Յետոյ ժամանակ մը դասախօսած է իր ծննդավայրին մէջ։ 1858ին ուսուցիչ եղաւ Կեսարիոյ Հայկեան վարժարանին մէջ, ուրկէ անցաւ Յունաց

Զինճիտէրէի վանքին դպրոցը իբրև Թուրքերէնի ուսուցիչ։ 1888ին Թալասի Վերի Թաղին վարժարանին մէջ ուսուցչութեան պաշտօն կ'ստանձնէ։ 1890 Յունիսին, իր տունը կատարուած հարսանեկան հանդէսին ատեն, հրաւիրեալ բազմականաց ներկայութեան յանկարծ դպրոցի տնտեսը կը ներկայանայ «էֆէնտի, կ'ըսէ, պու կիւնտէն իթիպարէն մէքթէպիմիզ խօճալըղընտան ազլ իտիլտին, հոգաբարձու էֆէնտինին էմրի պու տըր»:

Հանդէսի և ուրախութեան ժամանակ հաղորդուած այս տխուր լուրին վրայ, մեծ տրտմութիւն մը կ'զգայ, քիչ մը վերջ հաղորդուած լուրին ճշդութիւնը կը հասկնայ և հետեւեալ օրն իսկ, եղելութիւնը նամակով Տրդատ եպ. Պալեանի տեղեկացնելով դարման և օգնութիւն կը խնդրէ։ Տրդատ եպ. դասատուի մը, այսպէս անժամանակ եղած անարգանքէն զայրոյթ զգալով, անմիջապէս կը գրէ «զՁեզ այսօրուընէ վանքի դպրոցին դասատու ընդունած եմ չորս ոսկի ամսականով», այսինքն աւելի քան իր ստացածը։

1890էն 1895 կը պաշտօնավարէ հոն, սակայն 1895ին իր ըրած մէկ աններելի գործին համար Տրդատ եպ. զայն կը հրաժարեցնէ (Հայրենիք, 16 Օգոստ. 1895, Թ. 1252)։

1895–1898 կրկին կը պաշտօնավարէ Թալասի մէջ։ 1898-1899 դպրոցական տարւոյն սկիզբը պաշտօնի կը կոչուի Ամասիա, և տարի մը յետոյ (1900) դարձեալ կը վերահաստատուի Ս. Կարապետի վարժարանին մէջ ուր կ'ունենայ երկար պաշտօնավարութիւն։ Հմուտ Թուրքերէնի և պարսկերէնի ու գրաբարագէտ։ Բնական մահով մեռած։

ԱԼԱԿԷՕԶԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Վաղեմի կրթական մշակ մը, որ 1880ական թուականներուն ունեցած է մասնաւոր վարժարան մը։ 1892–1895 Կիւմշեան վարժարանի ընդհ. հսկողի պաշտօնը վարած է։ Նահատակուած է 1895ի ջարդին (Բիւզանդիոն, Թ. 105)։

ԱԼՁԸՃԵԱՆ ԳՐԻԳՈՐ.— Թալասցի, վերջին տնօրէնը Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին։ Շողշողուն դէմք մը այնքան արտաքինով որքան իր ինքնութեան մէջ։

Շրջանաւարտ Մարզուանի գոլէճին, ուսուցչութիւն ըրած է մասնաւորապէս Կեսարիոյ մէջ։ Իր մասնագիտութիւններն էին անգլիերէն լեզուն, տիեզերագրութիւն, և ուսողութիւն։ 1901ին դասատու եղած է Թալասի Վերի Թաղի Վարդ–Պատրիկեան վարժարանին, յետոյ տնօրէն նոյնին։ Կեսարիոյ Հայկեան վարժարանին մէջ ալ պաշտօնավարած է բաւական տարիներ։ Իր Թուրքերէն բեմբասացութիւններով դղրդած է թեմերը։ Տարագրութեան վեցերորդ խումբին մէջ, սպանուած է Սաման Տերէսիի մէջ, Կէմէրէկի ճամբուն վրայ։ Զինքը սպանած ատեն Կեսարացի Չէթէ Րէյիսին ծաղրելով՝ կը հրամայէ որ ատենաբանութիւն մը ընէ։ Առաջին տապարի հարուածը կ'իջնէ և մէկ անգամէն գետին կը ձգէ։ Քիչ վերջը՝ ձախ բազուկը և յետոյ երկու ոտքերը կը կտրեն։ Ալձըճեան կը պոռչէ՝ ինչպէս որոջը՝ կտրիչին առջև։ Կապար կը խնդրէ պաղատանօք և սակայն կը զլացուի։ Վերջապէս իր աղիկեզիկ ձայներուն չկարենալով դիմանալ Թալասցի ծանօթ Թուրք մը, տապարին տիպճիկովը ճակտին հարուած մը կուտայ և ուղեղը դուրս կը թափէ։

ԱՄԱՏՈՒՆԻ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ (ՄԵՍՐՈՊ ՎՐԴ.).— Ֆէնէսէի վարժարանին իրական հիմնադիրը և կազմակերպիչը։ Ծնած է Կ. Պոլիս 1850ին։



երկար ատեն ուսուցչութիւն ըրած է։ 1888ին Ֆէնէսէցիներէ կազմուած Ռուբինեան միութեան կողմէ Կ. Պոլիսէն կը ղրկուի Ֆէնէսէ 70 օսմ. ոսկի տարեթոշակով, որ Միութեան վարչութիւնը ուղղակի, կանոնաւորաբար իրեն վճարելու խոստում տուած էր։ Շատ մեծ զարկ տուաւ վարժարանին (տես էջ 1170-1)։ 1892ին կը ձերբակալուի իբր Հնչակեան և կը ղրկուի Գաղատիա, Պատ. Ատեանի առջև դատուելու համար։ Ընդհ. ներումէն օգտուելով, 1893ին կը դառնայ, սակայն երկարամեայ բանտարկութեան մը տառապանքներէն դառնացած և յուսահատ կ'ստիպուի թողուլ իր պաշտօնը և դառնալ Կ. Պոլիս, ուր Ս. Յակոբի որբանոցին մէջ կը պաշտօնավարէ։

1901ին Սիս երթալով կը ձեռնադրուի վարդապետ իբր միաբան։ 1908ին Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ Ֆէնէսէցիք զինքը կրկին կը հրաւիրեն դպրոցին տնօրէնութեան։ Սիսէն կը փութայ, սակայն միայն մէկ տարի կրնայ այդ պաշտօնը վարել։

1909ին կը թողու պաշտօնը, ու հոն բժշկութեամբ կը զբաղի (Բիւզանդիոն, Թ. 4115)։

Տարագրութեամբ կ'երթայ Միջագետքի անապատները։ Զինադադարին պահ մը Հալէպ մնալէ յետոյ կու գայ Կ. Պոլիս, ուր քարոզչութիւն կ'ընէ։ 1923էն ի վեր Պուլկարիա կը գտնուի։

ԱՄԱՏՈՒՆԻ ՎԱՀԱՆ.— Ծնած է 1870ին Մուշ։ Կրտսեր որդի վաճառական Պօղոս Դօշոեանի։ Փայլուն ընթացաւարտ Մշոյ Կեդր. վարժարանէն, հմուտ պատմութեան։ Հիմնած է Մշոյ Սանուց Միութիւնը։ 1894ին Միացեալ Ընկերութեան կողմէ ղրկուած է իբր կրթական քննիչ Հայաստանի զանազան գաւառները ինչպէս Բաղէշ, Սղերդ, Սասուն, Ախլաթ, Մանազկերտ, Պայազիտ։ Յետոյ կ'անցնի Սեբաստիա և Ազիզիյէի մէջ կը հիմնէ Միացեալ Ընկերութեան անդրանիկ վարժարանը, ուր կը պաշտօնավարէ երկար տարիներ իբր տնօրէն։



Կը ձերբակալուի Ազիզիյէի մէջ և Սեբաստիա կը տարուի։ Երկար ամիսներ բանտարկութենէ յետոյ ներման կ'արժանանայ։

Կը պաշտօնավարէ Կեսարիոյ Հայկեան և Յակոբեան և Միացեալ վարժարաններուն մէջ իբր ուսուցիչ պատմութեան և թուաբանութեան։ 1901-1904 տնօրէն Յակոբեան վարժարանի։ Կեսարիոյ Հնչակեան մասնաճիւղի կազմակերպութեան մէջ մեծ դեր կը կատարէ։ Կուսակցական անունն էր «Օշին»։ 1909ին Կիլիկիոյ եղեռնի ատեն Կեսարիոյ ինքնապաշտպանութեան գործին կը բերէ իր մասնակցութիւնը։ 1911ին Ամատունի՝ իր տիկնոջ հետ Նիկոսիոյ Ազգ. վարժարաններու տնօրէնութիւնը կ'ստանձնէ։ 1914ին կ'երթայ Հաճըն իբր տնօրէն Որբանոցին։ 1915 Ապրիլ 20ին կը ձերբակալուի և Կեսարիա կը ղրկուի՝ Պատերազմական Ատեանին յանձնուելու համար։ Երեք ամիս շա-

րունակ ամենավայրագ խոշտանգումներ կրելէ յետոյ 31 Յուլիս 1915ին, կախաղան կը հանուի։ Զինքը մատնողն էր Դաշնակցական Նախկին ուսուցիչ Գէորգ Երլանճեան։

ԱՊԱՀՈՒՆԻ ԿԱՐԱՊԵՏ.— Կը ցաւիմ որ իր մասին չունիմ պէտք եղած ծանօթութիւնը։ Արամեան վարժարանի տնօրէնութիւնը վարած է երկար տարիներ (1889–1901), ինչ որ արդէն ցոյց կու տայ թէ որոշ կարողութեամբ օժտուած մէկն էր։

ԱՊԱՃԵԱՆ ՅԱԿՈԲ.— Երուսաղէմի վանքին մէջ ուսած, և կրօնաւորութեան պատրաստուած Ֆէնէսէ գալուն երկար տարիներ՝ իբր ուսուցիչ ծառայած է հոն։ 1905ին Ֆէնէսէ էր իբր ուսուցիչ ծաղկոցի։

ԱՍԼԱՆԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ (յետոյ բժիշկ).— Ծնած է Մունճուսուն 1873 Դեկտ. 3ին։ Նախնական կրթութիւնը ծննդավայրին Մծբնեան վարժարանին մէջ ստանալէ յետոյ, տեղւոյն բողոքական քարոզիչէն անգլիերէն դասեր կ'առնէ և 1888ին կը մտնէ Մարզուանի Անատոլիա Գոլէճը, ուրկէ շրջանաւարտ կ'ըլլայ 1893ին։ 1893-1894ին անգլիերէնի դասախօս Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին։ Յետոյ Պէյրութ գացած իբր վաճառականի գրագիր, սակայն տարին չլրացած մտած է Ամերիկեան բժշկ. համալսարանը։ 1899ին բժիշկ վկայուած և Կ. Պոլսոյ մէջ



քննութիւն տալէ յետոյ գացած է Կեսարիա, ուր գործակցած է Թալասի Ամերիկեան հիւանդանոցի բժշկապետներուն (Dr. W. S. Dadd. և Dr. W. M. Post)։ 1908ին կը տեղափոխուի Օրտու։ 1910ին կ'երթայ Բարիզ, ուր ձեռք կը բերէ վիրաբոյժ-կնախտաբոյժի վկայական, երկու տարի աշխատութեամբ։ 1912ին կը հաստատուի Թալաս։ 1914ին կը զինուորագրուի և կը ղրկուի Կովկասի ճակատ, և կ'ըլլայ Մամախաթունի հիւանդանոցին բժշկապետ, և թիւֆիւսէ վարակուած կը դառնայ Երզնկա։ Յետոյ կը ղրկուի Սեբաստիա, ուրկէ կը յաջողի դառնալ Թալաս, պաշտօնով, սակայն երկու ամիսէն կը ղրկուի դարձեալ ճակատ։ Զինադադարին Կարս էր, և եկաւ Կ. Պոլիս և գնաց Թալաս՝ ուրկէ իր ընտանիքը առնելով կ'երթայ Էրէյլիի ճամբով Ատանա, ուր կ'ստանձնէ Ֆրանսական հիւանդանոցին բժիշկի պաշտօնը, նոյն ատեն դարմանելով N. E. R.ի որբանոցներուն երկսեռ Հայ որբերը։ Կիլիկիոյ պարպումէն յետոյ կ'երթայ Կ. Պոլիս և N. E. R.ի որբանոց-



ներուն մէջ կը պաշտօնավարէ։ 1822 Նոյեմ.ին որբերու կարաւանին հետ գնաց Քորֆու, ուր որբանոցներուն իբր բժիշկ աշխատած է, իսկ անոնց փակումէն յետոյ, American Women's Hospitalsի կազմակերպութեան կողմէ կը կոչուի Սելանիկի հիւանդոցին մէջ պաշտօնի, և կ'ըլլայ միեւնոյն ատեն Ամեր. հիւպատոսարանի բժիշկը։ Կեսարիոյ մէջ անդամակցած է Դաւառ. Ժողովի, Ատանայի մէջ՝ Ազգ. Խորհուրդին և Ատենապետ Կեսարիոյ Հայրենակցականին, Սելանիկի մէջ Հօկի վարչութեան Ատենապետն էր։ Երբեմն Ազատական կուսակցութեան անդամ, անոնց միացումէն յետոյ անդամակցած է Ռամկավար-Ազատական կուսակցութեան։ Մարզուան Անաթոլիա Գոլէճի տպարանէն հրատարակած է իբր «Նոր-Այգ»ի մատենաշար, փոքր տետրակ մը Քոլերա (1910) խորագրով և ունի յօդուածներ Հայ լրագիրներու մէջ։



ԱՍԼԱՆ ՎԱՀԱՆ.— Մարզուանցի և թերաւարտ ծննդավայրին Ամերիկեան Գոլէժին։ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին անգլիերէն լեզուի դասախօս 1906էն 1909։ 1909ին կը մեկնի Երուսաղէմ կրօնաւորելու համար։ Յանաստեղծութեան հակում ունէր։ Աշխատակցած է Հայ մամուլին։ Մեռած է (Ժամանակ, թ. 5995)։

ԱՍՏՈՒՐԵԱՆ ՊԱՏ. ՄԱՐՏԻՐՈՍ.— Աշակերտ փոքր Տ. Կարապետի (Զօմախլու) և երկար ատեն երաժիշտ ուսուցիչ Թալասի Վարի թաղի վարժարանին մէջ։

ԱՏՈՒՐԵԱՆ ՍԵԴՐԱՔ. — Ծնած է Կեսարիա 1873 Նոյեմ. 18ին։ Նախակրթութիւնը ստացած է Աւետիսեաններու «Ազգասիրաց ընկերութեան» դպրոցին մէջ, իսկ երկրորդական կրթութիւնը՝ Արգէոս բարձրագոյն վարժարանին և Մարզուանի Անատոլիա Գոլէճին մէջ։ Յետոյ գացած է Արմաշ ուր մնացած է տարի մը և աշակերտած Եղիշէ եպ. Դուրեանի, պատմական, մատենագրական, և ստուգաբանական ծանօթութիւններ ստանալու և գրաբարի հմտանալու համար։ Յետոյ դարձած է Կեսարիա, ուր Թալասի Ամերիկեան վարժարանի մէջ հայերէնի դասատու եղած է։

Այժմ Ամերիկա, ուր նախ տասը տարի դերձակութիւն ըրած է, և հիմա իր ագարակին մէջ կ'զբաղի հաւաբուծութեամբ, և աւետարանիչն է Հայ Նահատակաց Եկեղեցւոյն ի Ֆիլատելֆիա։

ԱՐՁՈՒՄԱՆԵԱՆ ՍԱՐԳԻՍ. Ծն. Կէմէրէկ, Գէորգ էսաեան սան Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին մէջ, որմէ կը վկայուի 1896ին, և կը մտնէ ուսուցչական ասպարէզ նախ պաշտօնավարելով Կիւմշեան վարժարանի մէջ։ Յետոյ Ս. Կարապետի վարժարանը մտած է ուր մնացած է մինչև տեղահանութիւն։ Մեռած է մահու ճանապարհին վրայ։

ԱՐՄԷՆ ԿԱՐԱՊԵՏ (տես. Գալայճեան)։

ԱՐՍԼԱՆ ԻՍՐԱՅԷԼ.— Եղբայրը վերոյիշեալ Տոքթ. Յովհ. Ասլանեանի, Ծն. 1879 Օգոստ. 15 ի Մունճուսուն. իր նախակրթութիւնը կ'ստանայ ծննդավայրին Մծբնեան վարժարանը, ուրկէ կը փոխադրուի Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը, որուն երկրորդ շրջանա-

ւարտներէն մին կ'ըլլայ (1894) և իբր Գէորգ Խաժեան սան ըստ իր յանձնառութեան կ'ընդգրկէ ուսուցչութեան ասպարէզ, ստանձնելով պաշտօն Կեսարիոյ Հայկեան վարժարանին մէջ, և երկու տարի յետոյ կ'ըլլայ տնօրէն նոյն վարժարանին և երեք տարի (1897-1900) կը վարէ այդ պաշտօնը։ 1900–1901 դպրոցական տարւոյն կը վարէ Մարզուանի, 1901–1903 երեք տարիներուն՝ Օրտուի ազգ. երկսեռ վարժարաններու տնօրէնութիւնը։ 1903ին՝ Օրտուի վրժ.նէն առաջին շրջանաւարտները տալէ յետոյ կը մեկնի Մուն-ճուսուն ուր կը մնայ մէկ տարի իր ծնողքին մօտ։ Ցետոյ կը մեկնի Բարիզ և կը մտնէ ճարտարապետու-թեան վարժարան։ 1909ին վկայականը ստանալէ յե-տոյ նոյն տարւոյ Դեկտեմ-բերին կը մեկնի Պուէնոս Այրէս ուր կը մնայ ցարդ, նեցուկ և պաշտպան հան-դիսանալով վերջերս հոն գաղթող Հայերուն։ 1921ին ինքն կը հիմնէ «Դաղութա-յին կեդրոն»ը, որ սրահ մը վարձելով ապահովեց եկե-ղեցական արարողութեանց կատարումը և տեղաւորեց հասնող հազարաւոր գաղ-թականները։ 1929ին այդ միութիւնը կոչուեցաւ «Հայ Առաքելական Եկեղեցւոյ Հոգաբարձութիւն»։



1930ին ինքն շինեց Հայ Կեդրոնի շէնքը որ կը պարունակէ թատերասրահ մը, վարժարանի յատուկ մաս մը՝ ուր ուսում կ'առնեն 220 երկսեռ տղաք, ուրիշ սրահ մը՝ ուր առժամապէս կը կատարուին եկեղեցական արարողութիւնները, Ազգ. Մատենադարան և տպարան մը՝ ուր կը տպուին «Հայ Կեդրոն» և «Նոր Սերունդ» ամսաթերթերը։

Իսրայէլ Արսլան անդամ է Պուէնոս Այրէսի Հայ Առաքելական Եկեղեցւոյ Հոգաբարձութեան և Հայ Բարեգործական Ընդհ. Մ.եան։ Ինքն է որ 1932 Հոկտ.ին հիմնած է Հայ Կեդրոն ամսաթերթը և զայն կը խմբագրէ ցարդ։ Իսրայէլ Արսլան իբր անհատականութիւն մը կը գրաւէ այսօր հարաւային Ամերիկայի այս գաղութին մէջ պատուաւոր դիրք մը և իբր արժանաւոր զաւակը իր հայրենիքին, մանաւանդ մէկ ընտիր արդիւնքը՝ Կեսարիոյ Բարձրագոյն վարժարանին, պատիւ մըն է իր ազգին և իր ծննդավայրին և զինքն դաստիարակող հաստատութեան:

ԱՐՍԼԱՆԵԱՆ ՄԻՀՐԱՆ. Մանճըլընցի, Գ. Խաժեան սան. Բ. Կարգի վկայական ստացած է (1894).— Ընդգրկած է ուսուցչութեան պաշտօն։ 1895էն ի վեր տնօրէն-դասատու էր Գոնիա–Էյէյլիի Ազգ. վարժա-րանին։






ԱՐՍԼԱՆ ԽՍՐԱՅԷԼԻ ԿԱՌՈՒՑԱԾ ՀԱՅԿ. ԿԵԴՐՈՆԸ



ՀԱՅԿ. ԿԵԴՐՈՆԻ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԸ



ԱԻԱԳԵԱՆ ԱՐԻՍՏԱԿԷՍ (Ատամնաբոյժ).— Ծնած Ֆէնէսէ 1880 Մարտ 3ին։ Ընտանեկան մականունով Տաքէսեան։ Նախնական կրթութիւնը կ'ստանայ ծննդավայրին Ռուբինեան վարժարանին մէջ և երկրորդական կրթութիւնը՝ Տարսոնի Ամերիկեան Ս. Պօղոսեան Գոլէճին մէջ։ 1902էն 1905, երեք տարի յաջորդաբար պաշտօնավարած է Ֆէնէսէի, Էվէրէկի և Գոնիա-Ագսարայի Ազգ. վարժարաններուն մէջ իբր ուսուցիչ։ 1906ին Պրուսայի Ազգ. և Ֆրանսական վարժարաններուն այցելու-դասատու կ'ըլլայ եօթը տարի։ 1913ին կ'անցնի Ամերիկա և կը մտնէ Նիւ-Եորք Ատամնաբուժական վարժարանը։ Հիմա Ամերիկայի մէջ ատամնաբոյժ և անդամ Ֆէնէսէի Ռուբինեան Ուսումնասիրացին։

ԱԻԱԳԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Միականի նշանաւոր երաժիշտ-դպրապետ. 1890-15 պաշտօնավարած է գրեթէ անընդհատ՝ Ֆէնէսէի մէջ, ոչ թէ միայն իբր ձայնաւոր այլ նաև ծաղկոցի ուսուցիչ։ Միայն քանի մը տարիներ պաշտօնով հեռացած է Կեսարիա (1910-1911) կամ Ատանա։ Ունեցած է բազմաթիւ աշակերտներ, որոնք զանազան քաղաքներու և գիւղերու մէջ ջանացած են միօրինակ դրութեան մը վերածելու եկեղեց. երգեցողութիւնը։ Առհասարակ Կ. Պոլսոյ դպրապետներուն հետեւած է. սակայն գաւառի ժողովրդին ճաշակը զգալի եղած է իր երգեցողութեան մէջ։ Յօրինած է ինքնուրոյն երգեր թէ՛ կրօնական և թէ՛ ազգային-ժողովրդական։ Մեծ ընդունելութիւն գտած էր իր եղանակած Առաքելոց-Սրբոց երգեցողութիւնը մինչև պատարագին աւարտելը։ 1915ին տարագրութեան ատեն սպանուած է խժդժօրէն։ Չենք գիտեր ի՛նչ բախտ ունեցած են իր թուղթերը և տետրակները որոնց վրայ կը գուրգուրար խանդաղատանքով (Գաբրիէլ Թագւորեանի ձեռ.):

ԲԷՄՊԷՃԵԱՆ ՅԱԿՈԲ.— Էֆքէրէյի, Գէորգ Էսաեան սաներէն՝ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին։ 1894ին դպրոցը աւարտելէն յետոյ ընդգրկած է ուսուցչական ասպարէզ, մասնաւորապէս իր ծննդավայրին վարժարանին մէջ, ուր երկար պաշտօնավարութիւն ունեցած է։

ԳԱԲՐԻԷԼԵԱՆ ՄԱՐԳԱՐ.— 1889ին իբր թուրքերէնի ուսուցիչ Ս. Կարապետի բարձրագոյն վարժ.ին մէջ պաշտօնի կոչուած է և երեք տարի պաշտօնավարած։



ԳԱԼԱՅՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (հիմա ԱՐՄԷՆ ԿԱՐԱՊԵՏ).— Ծնած է Էվէրէկ 1874 Դեկտ. 8ին, ուր ստացած է իր նախնական կրթութիւնը, Կարապետ Լաչինեանէ, Տ. Կարապետ քհ. Մէլէքեանէ և վերջապէս Երուանդ Երկաթեանէ։ 1888ին Կ. Պոլիս կ'երթայ հօրը քով, և Տոքթ. Յ. Թիրեաքեանի յանձնարարութեամբ կը մտնէ Միրիճանեան Լեզուաբանական վարժարանը որուն 7 տարուան շրջանը 4 տարիէն կը լրացնէ, յամառ աշխատութեամբ, և նոյն տարին (1892) իսկ վարժարանին մէջ պաշտօնի կը կոչուի իբր ներքին ուսուցիչ, ստանձնելով քանի մը կարգերու հայերէնի, ֆրանսերէնի և մաթեմաթիքի դասերը։ 1894ին վարժարանը կը փակուի և ինքն վեց ամիս մասնաւոր դասեր տալով կ'զբաղի։ 1895ին Մալկարայի վարժարանին տնօրէնութեան կոչուեցաւ և երեք տարի պաշտօնավարեց արդիւնաւորութեամբ։ Հոն հաստատեց նաև կիրակնօրեայ դպրոց մը։ 1898ին կոչուեցաւ Էվէրէկ ուր հասաւ Յուլիս 12ին, և ստանձնեց իր ծննդավայրին վարժարանին տնօրէնութիւնը, այնպիսի ատեն մը, երբ հայկ. կոտորածներու սարսափը և մռայլ տպաւորութիւնը դեռ չէր ջնջուած վերապրողներու դէմքին վրայէն։ Իր ժամանումին հետեւեալ օրն իսկ իր տունը և գոյքերը խուզարկուեցան՝ ապահովաբար զրպարտութեամբ, սակայն բան մը չգտնուեցաւ, որով հետեւանք մը չունեցաւ։ Գալայճեան 1898-1902 չորս տարի պաշտօնավարեց, մասնաւոր կարեւորութիւն տալով աղջիկներու վարժարանին, և զուտ անհատական նախաձեռնութեամբ բանալով մանկապարտէզ մը, որ թէև հազիւ 8-10 փոքրիկներով սկսաւ, բայց քիչ ատենէն մեծ թուով աշակերտ ունեցաւ։ Անշուշտ այս նախնական ձեռնարկը, մանկապարտէզ բառին իրական իմաստը արդարացնելէ շատ հեռու կը մնար, միջոցներու չգոյութեան և տեղական պայմաններու աննպաստութեան պատճառով, սակայն իր այդ վիճակին մէջ անգամ մեծ բարիք մը եղաւ թէ՛ երկսեռ մանկիկներու և թէ՛ անոնց ծնողաց համար։ Իր մասնաւոր ջանքերով և քաջալերութեամբ բաւական թուով աղքատիկ խոստմնալից ուսանողներ գացին Տարսոն և Ամերիկեան Գոլէճը մտան։

1902ին թաղականութեան հետ անհամաձայն՝ կը հրաժարի և մէկ տարի Նիկտէ և 4 տարի Տարսոնի Ազգ. վարժարաններուն մէջ պաշտօնավարելէ յետոյ 1907ին 3 տարուան պայմանագրութեամբ վերստին պաշտօն կ'ստանձնէ Էվէրէկի մէջ, իրեն հետ ունենալով Արիստակէս Սարգիսեանը և Հայկազուն Յակոբեանը, և քանի մը տեղացի օգնականներ։ Իսկ աղջիկներու բաժնին մէջ, Տիկ. Ազաւնի Սարգիսեան, քանի մը տեղացի օգնականներով։ 9 չափահաս ուսանողներ՝ նախորդ տարուան շրջանաւարտներէն, իրենց փափաքով վերստին աշակերտեցին։ Արդիւնաւոր շրջան մը բոլորելու ամէն հաւանականութիւն ունեցող այս կազմը սակայն քայքայուեցաւ, վասնզի Թաղական և Հոգաբարձու իրարու հետ վէճի բռնուեցան և հրաժարեցան և հին գլուխ ջոջեր պաշտօնի մտան և ինքն նախընտրեց հրաժարիլ մէկ տարուան պաշտօնավարութենէ ետքը։ Յետոյ մէկ տարի Դարաման, և երկուական տարի՝ Գոնիա և Պիլէճիկ պաշտօնավարեց իբր տնօրէն, բայց զզուած մեր Ազգ. վարժարաններու սովորական ցաւերէն, և Հայ ուսուցիչներու անհաստատ կացութենէն, գնաց Կ. Պոլիս, տեւական գործի մը ի խնդիր։ Սակայն տիրող մթնոլորտը քաջալերական չի գտներ և կ'որոշէ անցնիլ Ամերիկա, ուր կը յուսար փոխադրել յե-

տայ իր ընտանիքը և զաւակներուն տալ բարձրագոյն կրթութիւն։ Ամերիկա կը հասնի 1913 Հոկտ. 18ին, ճիշդ տարի մը առաջ Ընդհանուր պատերազմէն, որուն միջոցին թրքական բարբարոսութեան զոհ կ'երթան մայրը, կինը և զաւակները, բացի միակ աղջիկէն։ 1920ին Ամերիկեան քաղաքացիութեան վկայական առնելու առեն կը փոխէ իր մականունը և կ'առնէ Արմէն անունը որ ուսանողութեանը միջոցին կրած էր ժամանակ մը։

Հիմա կ'ապրի Նիւ-Եորքի մէջ։

ԳԱԼՖԱՅԵԱՆ ԱՐԻՍ.— Ծնած է Զօմախլու 1884 Ապրիլ 12ին, իր հօրը Տ. Կարապետ քհ.ի մահէն 40 օր վերջ։ Որբ մեծցած է։ Նախակրթութիւնը ստացած է իր ծննդավայրին մէջ և ապա ղրկուած՝ 12 տարեկանին Ս. Դանիէլի վանքը Զօմախլուցի Ներսէս վրդ. Շըլխեանի մօտ, ուր երկու տարի ստացած է վանական դաստիարակութիւն։ 15 տարեկանին արդէն ուսուցիչ էր



Զօմախլուի Արամեան դպրոցը։ Ապա պաշտօնավարած է Կեսարիոյ Հայկեան, Թալասի՝ Վարդ-Պատրիկեան և Ֆէնէսէի Ռուբինեան վարժ.ները մէկ մէկ տարի, և յետոյ դարձեալ Զօմախլու Ուսումնասիրացի մէջ։ Յետոյ կը փոխադրուի Կեսարիա և Հայկեան վարժարանին մէջ 5 տարի կը պաշտօնավարէ նախ իբր ուսուցիչ և երաժիշտ, յետոյ իբր դաստիարակ։ Այս շրջանին դպրոցներու միացումը կը կատարուի Յակոբ Թիմուրեանի ընդհ. տնօրէնութեան տակ։ 1914ին կը պաշտօնավարէր Զօմախլուի Վարի թաղը։

Ընդհ. պատերազմին կը զինուորագրուի Ամէլէ Թապուրիի Ե. վաշտին մէջ, ապա կը փախի, սակայն կը ձերբակալուի և կը բանտարկուի։ Տարագրուած մինչև Բագդա, 1918ին Ճարապլուս՝ Ամպար Եեաքիպի կ'ըլլայ։ 1919ին Հալէպ Զօրանոցին մէջ գաղթականաց տնօրէն։ 1919-1920ին Ատանայի Հնչակեան Կեդր. վարժարանի հայերէնի ու կրօնի ուսուցիչ, յետոյ Տարսոնի Ազգ. վրժ.ի ուսուցիչ։ Կիլիկիոյ պարպումին հետեւանօք Սիրա կղզին կ'ապաստանի և 1921ին կը բանայ հոն Յունաստանի առաջին Հայ վարժարանը անձնական։ Իզմիրի աղէտէն յետոյ Քոքինիայի մէջ բացաւ վարժարան մը, որ յետոյ վերածուեցաւ Համազգայինի (1922-1923)։ Ապա կը հրաւիրուի Ամերիկեան Բըլըֆի Որբանոցը՝ Միս Կուշմէնի մօտ, և երկու տարի յետոյ Սիրայի Որբանոցը։ 1928-1929ին վարեց Գավալայի և 1930-1934 Քոքինիայի և 1935էն յետոյ Ֆիքսի Ազգ. վարժ.ներու տնօրէնութիւնները։ Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն ետք՝ 1910ին Ազատ Ոստանիկի Կեսարիոյ շրջանին մէջ կազմակերպական աշխատանք վարած առեն, Հնչակեան կուսակցութեան անդամագրուած։ Հեղինակ «Զօմախլու» շահեկան հատորին (Նիւ-Եորք, 1930) որ տպուած է Ամերիկայի Զօմախլուի Նպաստամատոյց ընկերութեան կողմէ։

ԳԱՌՄԷՆ (Նախկին Մելքոնեան Տաճատ վրդ.).— Ծնած է 1880ին։ Աշակերտ Գէորգեան ճեմարանի։ Վարդապետ կը ձեռնադրուի 1904ին։ Իբր դաշնակցական գործիչ կը թողու սքեմը։ 1908էն յետոյ կու գայ



Թուրքիա և ուսուցչական պաշտօն կը վարէ Վան և Մուշ։ Մուշ գտնուած առեն, տխրահռչակ Մուսա Բէկի դրդումով՝ կը հալածուի կառավարութենէն և կ'ապաստանի Վան ուր կ'ամուսնանայ Կ. Պոլսեցի ուսուցչուհի-գրագիտուհի Օր. Իսկուհի Ջիթճեանի հետ (Օր. Նինի) և միասին կը պաշտօնավարեն նաև Թալաս, իբր ուսուցիչ։ 1915ին կ'աքսորուի Հալէպ, ուրկէ Տիկ. Գառմէն կը յաջողի գալ Կ. Պոլիս, իսկ Գառմէն կը քշուի անապատ, ուր կը կորսուի։ Տիկ. Գառմէն հիմա կը գտնուի Զուիցերիա, իր միակ զաւկին հետ, որ բարձրագոյն ուսում կ'ստանայ։



ԳԱՎԱՖԵԱՆ ԶՕՐԱԲ.— Բնիկ Ֆէնէսէցի, իր ուսումը ստացած է իր ծննդավայրին մէջ և յետոյ օգնական ուսուցիչ և ուսուցիչ եղած է տեղւոյն Ռուբինեան վարժարանին մէջ 1905էն սկսեալ։ 1912ին տնօրէն Ռուբինեան վարժարանին ընկերակցութեամբ Տիգրան Տայեանի։ 1915ին տարագրուած և նահատակուած ի Ռաս-էլ Այն։

ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՍԵԴՐԱՔ.— Էվէրէկցի, աշակերտ Սարգիս Տօնիկեանի և Կարապետ Գալայճեանի (Արմէն)։ 5-6 տարի Էվէրէկի Ռուբինեան վարժ.ի մէջ ուսուցիչ եղած է ձեռնահասօրէն։ Անխոնջ աշխատող մը ինքնազարգացումի ճամբուն վրայ։ 1912-1915ին Սէմիզեան Սեդրաքի հետ տնօրէն Էվէրէկի վարժարանին։ Ընդհ. պատերազմին իբր Դաշնակցութեան գործօն անդամներէն մին կը ձերբակալուի և կը տարուի Կեսարիա ուր Պատերազմական Ատեանէն 10 տարուան կը դատապարտուի, և բանտարկուած կը մնայ Կեսարիոյ մէջ մինչև Զինադադարի օրերը։ Բանտէն արձակուելէն յետոյ կը դառնայ Էվէրէկ և վերաբացուած վարժարանին տնօրէն կ'ըլլայ, սակայն դժգոհ կացութենէն, առեն մը չարունակելէ յետոյ կ'անցնի Իզմիր և անկէ Խոտէմիշ ուր կ'ըլլայ տնօրէն մինչև 1922, Իզմիրի պարպումը։ Յետոյ կ'անցնի արտասահման և այժմ Բարիզ է։

ԳԱՐԱՄԱՆԵԱՆ Տ. ԳՐԻԳՈՐ ՔՀ.— Բնիկ Թալասցի, երբեմն դասատու Վերի թաղի վարժարանին և ապա քահանայ և աւագերէց նոյն տեղւոյն Ս. Աստուածածին եկեղեցւոյն։ Բաւական կարող և շատ համեստ ընթացք մը ունեցած է (ԼՈՅՍ, 1905, էջ 1140)։

ԳԱՐԱ-ՄԷՐՃԱՆ.— Իր բուն անունը անյայտ է։ 1826ին Ս. Սարգիս եկեղեցւոյ կալուածներէն տուն մը, Տըշարը չար թաղին մէջ կը վերածուի վարժարանի, ուր դասախօս կը կարգուի այս վարժապետը, որուն անունով դպրոցը կը կոչուի Գարա Մէրճան մէքթէպի, ինչպէս կը հաստատէ պղնձի վրայ յիշատակարան մը (Ե. Երկաթեան, Բիւզանդիոն, 1902, Դեկտ. 8. թ. 78)։ Գարա Մէրճան ուրեմն իսկական հիմնադիրը կրնայ համարուիլ Կիւմշեան վարժարանի։

ԳԸՋԱԲՐԱՀԱՄԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ.— Թալասցի, Քիւչիւք Քէօյցի, Գ. Էսաեան սան Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանի մէջ։ Վկայուած 1896ին։ Ժամանակ մը ուսուցիչ, յետոյ առեւտրական ի Գաղատիա։

ԳՊՐՉԼԵԱՆ ԵՂԻԱ.— Կէրմիրցի և աշակերտ տեղւոյն Պարթեւեան վարժարանի փայլուն շրջանին։ Գրաբարեան հայկաբան, և հանրածանօթ տաճկաբան։ Բարեմիտ դէմք։ Կէրմիր, Կեսարիա և քիչ մը ամէն ուրեք եղած է։

ԳՊՐՉԼԵԱՆ ՍՏԵՓԱՆ.— Կէրմիրցի, Պարթեւեանի սան, երկու տարի ուսուցիչ եղած է Եօզկաթ։ Յետոյ առեւտրական եղած է, և հաստատուած՝ Կ. Պոլիս։ 1908էն յետոյ Եօզկաթի վիճակէն կեդրոնի Ազգ. Ժողովին երեսփոխան ընտրուեցաւ։

ԳԼՃԵԱՆ ՕՐ. ՍԱԹԵՆԻԿ (Տիկ. Գունտաքճեան).— Արամեան վարժարանի ուսուցչուհի։ 1915ին կը տարագրուի։ Զինադադարէն յետոյ Ատանա։

ԳՆԹՈՒՆԻ ՊՕՂՈՍ (յետոյ Տ. ՄԿՐՏԻՉ ՔՀ.).— Կէրմիրցի, ուսուցիչ երաժշտութեան։ 1883ին կը պաշտօնավարէ Կէրմիրի Պարթեւեան և 1886ին Կեսարիոյ Հայկեան վարժարաններուն մէջ։ Յետոյ ուսուցիչ Ս. Կարապետի Բարձրագոյն վարժարանին։ Քահանայ կը ձեռնադրուի Եօզկաթի վրայ։

ԳՈՒՋՈՒՊԱԼԵԱՆ ՓԱՆՈՍ.— Կեսարացի, ձայնագրագէտ, ուսուցիչ Կեսարիոյ զանազան վարժարաններուն, ինչպէս նաև Միացեալ Ուսումնարանին մէջ։ Ընդհ. պատերազմի առեն Հայկեան վարժարանի մէջ ուսուցիչ էր։ 2 Սեպտ. 1915ին տարագրուած է և նահատակուած Հալէպի և Ուրֆայի միջև։

ԳՈՒՑՈՒՄՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Ծնած է Կեսարիա 1832ին։ Ըստ աւանդութեան մայրը անզաւակ ըլլալով կ'աղօթէ որ «Աստուած ինծի տղայ մը շնորհէ խնդիր չէ թէ յիմար ըլլայ»։ Արդարև կ'ունենայ զաւակ մը հաւմանդամ, ձեռքերը կծկուած, ոտքերը ծուռ և անգործածելի։ Իր մանկութեան առեն հետաքքրութեան և արգահատանքի առարկայ կ'ըլլայ։ Երբ պատանի կ'ըլլայ, ամէն արգելք կ'արհամարէ և մասնաւոր ուսուցիչներէ կը շարունակէ իր ուսումը, և գրեթէ ինքնաշխատութեամբ կը դառնայ իր ժամանակին ամենաբարձր թրքագէտը, և հայագէտը, և կը տիրանայ մաթէմադիկի մէջ մինչև եռանկիւնաչափութեան հմտութեան։ Ժամանակ մը մոլի գինեմոլ, բայց սիրահար գիրքերու, կը լքէ ըմպելիքը և քիչ առենէն կը տիրանայ գրադարանի մը։ Առեն մը կը հաստատէ առանձին դպրոց մը և հասուն աշակերտներ կը պատրաստէ։ Հայ եկեղեցւոյ շարականներէն մաս մը և Շնորհալիի երգերը թուրքերէն յանգաւոր ոտանաւորի կը թարգմանէ։ Անհաւատալիօրէն ճարպիկ երաժիշտ մըն էր և ծանօթ եւրոպական ձայնագրութեան, և հեղինակած է կարգ մը եղանակներ։ Նոյնպէս գծագրիչ էր և ունէր իւղաներկ նկարներ։ Եղած է հմուտ դաստիարակ։ 1875–1880ին կը դասախօսէր Արգէոս Բողոքականներու Բարձր. դպրոցին մէջ ուր կը տանէին զինքը շալակով։ Շատ մը երեկոյթներու մէջ սանթուր կը զարնէր այնպիսի ճարտարութեամբ որ հիացում կը պատճառէր և պատկառանք կը ներշնչէր։ Մեռած է ԺԹ. դարուն վերջին տասնամեակին (Պ. Պարճամէնէ տրուած տեղեկութիւններ)։

ԳՈՒՆՏԱՔՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Այնթապի Գոլէճէն վկայուած, ուսուցիչ անգլիերէնի։ Նախապէս կը պաշտօնավարէր (1902) Թալասի Միսիոնարաց վարժարանին մէջ, յետոյ իբր անգլիերէնի դասախօս հրաւիրուեցաւ Ս. Կարապետի Բարձր. վարժարանը։ 1908ին երբ Յարութիւն Նշանեան մեռաւ ստանձնեց նաև թուրքերէնի դասերը։



ԳՈՒՆՏՈՒՐԱՃԵԱՆ ՅԱԿՈԲ ՊԱՏՈՒԵԼԻ.— Ծնած է Թալաս 1835ին։ Իր ուսումը առած է Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին վարժարանին մէջ Յակոբոս եպ.ի ժամանակ։ Դպրոցէն ելնելէն յետոյ քանի մը տարի վարժապետութիւն կ'ընէ և ապա կը մեկնի Կ. Պոլիս՝ հոն հիւսնութեամբ պարապելու համար։ Կ. Պոլիսէն դարձին, Հաճի Աւետիք աղա Կիւլպէնկեան, զինքը կը համոզէ պաշտօն ստանձնել 3 ոսկի ամսականով Թալասի Վերի Թաղի Վարդ–Պատրիկեան մանչերու վարժարանին մէջ։ Պատուելին շարունակ 30 տարի (1860–1890) խղճի մտօք կը պաշտօնավարէ հոն և ապա կը փոխադրուի համանուն աղջիկներու վարժարանը՝ միևնոյն ամսականով և հոն ալ կը մնայ 15 տարի (1890-1905) նոյն յարատեւութեամբ։ Կը դասախօսէր հայերէն լեզու և կրօնք։

1905ին կէս–թոշակով հանգստեան կը կոչուի իր աչքերուն լոյսը կորսուած։ 1907ին տակաւին կ'ապրէր Թալասի մէջ շրջապատուած իր ընտանիքէն։

Պատ. Յակոբ Գունտուրաճեան պատկառելի դարձած էր իր բազմաթիւ աշակերտներուն և ընտանիքի անդամներուն, հեզահամբոյր ոգւոյն և մանաւանդ իր հաստատուն և զօրաւոր հաւատքին համար։ Սովորութիւն ըրած էր ամէն Աւագ Հինգշաբթի Թալասէն մինչև Ս. Կարապետ չորս ժամուան ճամբայ ծոմ բերնով հետիոտն երթալ և հաղորդութիւն առնել և կրկին հետի դառնալ, (Մելքոն Ասատուր, Արեւելեան Մամուլ, 1907, էջ 107-9)։

ԳՈՒՆՏՈՒՐԱՃԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ.— Բ. զաւակը նախորդին, Թալասցի, բարձրագոյն ուսում ստացած անձ մը, և լեզուական և գիտական պաշար ունեցող ուսուցիչ մը։ Կեսարիոյ զանազան վարժարաններու մէջ կը պաշտօնավարէ, և ապա Ս. Կարապետի վանքին վարժարանին մէջ անգլիերէնի դասերը կ'ստանձնէ։ 1894–1896 երկու տարի կը պաշտօնավարէ իբր տնօրէն նոյն հաստատութեան, յետոյ իր տեղը տալու համար Յարութիւն Նշանեանի։ 1896–1897 և 1897–1898 Կեսարիոյ Յակոբեան և Հայկեան վարժարաններու տնօրէնութիւնը կը վարէ (Բիւզանդիոն, թ. 338)։ 1898ին կը հրաւիրուի Ֆէնէսէ իբր տնօրէն Ռուբինեան վարժարանին և կը ջանայ գործադրել բարձր. նախակրթարանի ծրագիրը, որ մինչ այն՝ թերի թողուած էր և կու տայ կարգ մը դպրոցաւարտներ, որոնք ամէն տեսակէտով բարձր էին իրենց նախորդներէն։ Այս շրջանը կրնար այլապէս ալ օգտակար ըլլալ, սակայն դաս մը մարդոց անհաճոյ կ'ըլլայ իր պաշտօնավարութիւնը։ Զայն կը մեղադրէին իր զուարճամոլ հակամտութեանց համար։ Արտաքին ազդեցութեան հետեւանքով, խաչին լեռը խաղալու համար գացած առեննին աշակերտները կը ծեծեն զինքը։ Ասոր վրայ կը թողու իր պաշտօնը կը հեռանայ։ Նոյնպէս կը հեռանայ Կեսարիոյ շրջանէն և կ'ստանձնէ Ատանայի Ազգ. վարժարաններու տնօրէնութիւնը որ կը պահէր մինչև 1907։

ԳՕՃԱԵԱՆ ՏԻԿ. ԱՐՄԵՆԻՑԱ (Օր. Սըվազլեան).— Ծնած է Մունճուսուն, 1878ին, դուստր Գրիգոր Սըվազլեանի։ Նախակրթութիւնը առած է իր ծննդավայրին և բարձրագոյն կրթութիւնը՝ Թալասի Ամե-





րիկեան բարձրագոյն վարժարանին մէջ։ Գիտէր ածել երգեհոն։ Իբր վարժուհի դասախօսած է Մունճուսունի, Թալասի և Ամասիոյ ազգային վարժարաններուն մէջ, մինչև 1902, երբ ամուսնացաւ Գոճաեան Կարապետի հետ. 1915ին տեղահանութեան զոհ գնաց, ամբողջ ընտանեօք։

ԳՈՃԱԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (ՊՐՕՖ.). — Ծնած է 1877ին Թօփաճ գիւղի (Կէմէրէկ) մէջ։ Բարձրագոյն կրթութիւնը ստացած է Մարզուանի Անաթոլիա Գոլէճի մէջ։ Հմուտ Հայերէն լեզուի և արաբերէնի։ Պաշտօնավարած է Թալասի Ամերիկեան վարժարանին մէջ։ Թուրքերէնի և աշխարհագրութեան ուսուցիչ։ 1912ին Անաթոլիա Գոլէճի մէջ պաշտօն կ’ստանձնէ, և իբր պրօֆ. կը պաշտօնավարէ մինչև 1915։ Տեղահանութեան միջոցին կ’սպանուի ինքն, կինը և երկու զաւակները միւս պրօֆէսօրներու հետ։ Ունի բանաստեղծութեան հատոր մը «Հայկական հառաչներ» (1910) և բազմաթիւ յօդուածներ Բիւզանդիոնի, Ռահնիւմայի և այլ հայ հանդէսներու մէջ։

ԴԱՒԻԹԵԱՆ ԴԱՌՆԻԿ.— Ծնած է Կէրմիր 6 Յունուար 1874ին։ Աշակերտած է Կէրմիրի Պարթեւեան վարժ.ի մէջ խաչ. Պաղտասարեանի։ 1890ին շրջանաւարտ՝ նոյն վրժ.ի մէջ հայերէն լեզուի դասատու կ’ըլլայ։ 1893-95 կ’ըլլայ Կէմէրէկի Լուսինեան վարժարանի տնօրէն, և ապա երեք տարի՝ իր ծննդավայրին վարժարանին, որմէ յետոյ թողլով ուսուցչութիւնը կը մտնէ առեւտրական ասպարէզ և 1898ին կը հաստատուի Մերսին։ 1909ին Ատանայի ջարդէն յետոյ Մերսինի Որբանոցին տնօրէնութիւնը կ’ստանձնէ մէկ տարի։ Յետոյ կ’ըլլայ Իբրա-





նոսեան վաճառատան մասնաճիւղին վարիչ նախ Մերսին, ապա Պէյրութ (1911-13) և կրկին Մերսին (1914)։ Ընդհ. պատերազմին կը յաջողի Հալէպ Ատանա իբր ընդհ. տնօրէն «Իբրանոզադէ Թիւճարէթխանը» անունին տակ գործող Ատանա, Տարսոն, Մերսին Իբրանոսեան վաճառատուններուն։ Կիլիկիոյ պարպումէն յետոյ կը հաստատուի Պէյրութ ուր դարձեալ պահ մը առեւտրական գործով զբաղելէ յետոյ կրկին վերադարձ մը կ’ընէ և 1927ին տնօրէն կ’ըլլայ Պէյրութի Սահակեան Ազգ. վրժ.ին և Զօր. Անդրանիկեան մանկապարտէզին։ Երկու տարուան պաշտօնավարութենէ մը յետոյ կը թողու այս պաշտօնը։ 1934-35ին Լիբանանի Հայ վարժարաններու (28 հատ) կրթական քննիչ կ’ըլլայ։ Եղած է Ատանայի և Պէյրութի մէջ Ուսումն. խորհուրդի անդամ։ Աշխատակցած է իբր թղթակից Հայ մամուլին Գիմսէքա ստորագրութեամբ և ունի ոտանաւորներու հատոր մը «Բոյրեր եւ Թոյրեր» և բազմաթիւ ուրիշներ՝ լրագրաց մէջ ցրուած։

ԴԱՒԻԹԵԱՆ ՏՈՔԹ. ՍՏԵՓԱՆ.— Ծնած է Կէրմիր 1830ին։ Իր նախնական կրթութիւնը կ’ստանայ Կէրմիրի վարժարանին մէջ և ապա 10 տարեկանին իր երէց եղբայրը կը տանի զինքը Մարսէյլ, ուր առեւտրական կապեր ունէին իր մեծ եղբայրները։ Հոն կը հետեւի բարձրագոյն ուսման և բժշկական համալսարանի ընթացքին որ կիսաւարտ ձգելով կը դառնայ Կ. Պոլիս։ 1862ին, Կ. Պոլսոյ մէջ քննութիւն անցնելով կ’ստանայ բժշկական վկայական (Միւնասի, թ. 160), յետոյ իբր զինուորական բժիշկ կը ղրկուի Ալպանիա, սակայն իր առողջական վիճակը, միանալով աչքերու անտանելի ցաւերու, կ’ստիպէ զինքը հրաժարիլ պաշտօնէ և քաշուիլ իր ծննդավայրը, որուն վերածննդեան գործին կը բերէ իր նպաստը 1865ին իր տան մէջ



ֆրանսերէնի դաս տալով նորահաս երիտասարդներուն (Մասիս, 1865, թ. 698)։ Նոյնպէս կ’զբաղի լեզուագիտական փիլիսոփայութեամբ, և ընդհանուր և միօրինակ լեզուի մը մասին կը պատրաստէ թեզ մը որ կը յղէ Կ. Պոլսոյ կայսերական բժշկական վարժարանի իր ուսուցչապետներուն։ Բազմահմուտ անձնաւորութիւն մը որ ո՛չ միայն նորահաս սերունդին դաստիարակութեան հոգածու եղած է այլ իր գիտական պաշարով օգտակար ըլլալ ուզած է մարդկութեան, համամարդկային շահագրգռութեան առարկայ նիւթերու շուրջը միջազգային լեզուով մը՝ ֆրանսերէնով գրելով գիտական գործեր։ Իր առաջին երկն է Reponse au No. 2416 du «Manzouméi-Efkiar». ou sujet de la question de Science Positive ou de la théorie de l’Harmonie Absolue. (տպ. Արամեան, Կ, Պոլիս, 1874)։ Այս գործը հայերէնի թարգմանած է պ. Յակոբ Գրիգոր Կ. Պոլսոյ Ժամանակ օրաթերթին մէջ։ Այս՝ գրքոյկը պատասխան

մըն էր Մանզումէի որուն խմբագիրը մասնաւոր շահագրգռութիւն մը ցոյց տուած էր իր գործին համար։

Տոքթ. Դաւիթեան հետզհետէ կը խորանայ իր տեսութիւններուն մէջ և երեսուն տարիներու ուսումնասիրութիւններէ յետոյ, վերջապէս իր գիւտին համաշխարհային արժէքին վրայ վստահելով՝ 1887ին կը մեկնի Բարիզ՝ հոն Ակադեմիային գնահատութեան ենթարկելու համար իր տեսութիւնները, որոնք հինգ հատորներով ի լոյս ընծայել մտադրած էր։ Ասոնցմէ առաջինը կը հրատարակուի հետեւեալ խորագրով։ De l' Է (È) ou de positif de l'être qui est l'objet de la Science Positive De lunité des lettres ou du principe de la voix et de son harmonie absolue, que constituent l'objet des Sciences logiques, musique et mathématique. (տպ. Paris, 1887)։ Այս գիրքը ձօնուած էր Սերովբէ և Սարգիս Վիւլպէնկեաններու։ Դժբախտաբար յաջորդ հատորները կարելի չէ եղած հրատարակել իր մահը վրայ հասած ըլլալով 1888ին կամ ըստ այլոց 1890ին (տես Կոչնակ, 1932, էջ 985)։ Իր փրանսագիտութեան և ճարպիկութեան համար Կեսարիոյ շրջանին ժողովուրդը Ֆրէնկ Ոսեփան մակդիրով մկրտած էր զայն (Բիւզանդիոն, թ. 3543)։



ԵԱԴՈՒԿԵԱՆ ՀԱՑԿԱԶՈՒՆ.— Ծնած է Կեսարիա 1865ին. որդին Վեր. Քերովբէ Եադուպեանի։ Նախակրթութիւնը ծննդավայրին մէջ ստանալէ յետոյ 1879ին կը մտնէ Այնթապի Կեդր. Թուրքիոյ Գոլէճը որուն շրջանը աւարտած է 1883ին, և դառնալով Կեսարիա նոյն տարին հիմը դրած է Հայ-Բողոքականներու Արգէոս Բարձ. վարժարանին և տարուէ տարի մէկ դասարան աւելցնելով 1887ին տուած է իր առաջին ընթացաւարտները։ 1887ին մտած է Պէյրութի բժշկական համալսարանը, որուն ընթացքին 2ուկէս տարի հետեւելէ յետոյ ստիպուած է կիսահատ թողուլ առողջական պատճառներով և դառնալ Կեսարիա ուր տարի մը հանգիստ ընելէ վերջ՝ կազդուրուած 1891ին վերստին կը ստանձնէ Արգէոս Բարձ. վարժարանի ուսուցչապետութիւնը։ 1903-1906 Պրուսա կ'երթայ ուսուցչական պաշտօնով և 1907-1911ին դարձեալ Կեսարիոյ մէջ Արգէոս բարձր. վարժարանի ուսուցչապետ կ'ըլլայ։ 1911ին կ'ստանձնէ Աւետարանականներու դպրոցին տնօրէնութիւնը որ մինչև 1915 կը շարունակէ, միեւնոյն ատեն գիտութեանց դասերը ստանձնելով Միացեալ Ուսումնարանի մէջ. Իր պաշտօնակիցներէն մին որ իր տարագրութեան Գողգոթային ալ ընկերը եղած է և ականատես անոր մահուան կը վկայէ թէ «Տիպար եւ հմուտ սոյն ուսուցիչն նմաններուն մէջ՝ մէկ հատիկ էր, ինչպէս Արուսեակը աստղերուն մէջ, իր



համեստութեամբ եւ արժանիքներով: Պէտք չէ մոռցուիլ բազմաթիւ արժանիքներով օժտուած այս ուսուցիչին անունը: Երեւիլ երբեք չէր սիրեր: Սակայն բեմին վրայ էր միշտ՝ լսարաններու եւ դպրոցական հանդէսներու բեմին վրայ: Օժտուած էր ազատախոհութեամբ: Գիտութեան ուսուցիչը չունէր երբեք նեղմտութիւն: Պաշտօնին եւ դիրքին գիտակից ճշմարիտ ուսուցիչ մըն էր բառին իսկական առումով: Անբասիր անձ, անկեղծ բարեկամ եւ ճշմարիտ Հայ: Սակաւախօս, լուռ եւ անմռունչ բարձրացաւ հետին Գօզանի անմատչելի կատարներ՝ զարմանալի համբերատարութեամբ: Իր ցաւը, իր կսկիծը ոչ ոքի յայտնեց: Ոտքի վրայ մարեցաւ հասնող ճրագի մը պէս, Օսմանիյէի մօտ: Բողոքական Գաբրիէլ Տէյիրմէնճեանի յանձնեցին ուսուցիչին մարմինը, մասնաւոր քոյլտուութիւնը ձեռք բերելով մեզ բռնավարող ժանտարմին: Տէյիրմէնճեանի յանձնարարուեցաւ երթալ գտնել Օսմանիյէի պատուելին եւ եթէ ան մեկնած է Հայ քահանան: Այս վերջնոյն միջոցաւ կնքուած է տարաբախտ տարագրեալ ուսուցիչին գերեզմանը «Անշարժ եղիցի»ով մը»:

ԵԱՂՍԸՐՋԵԱՆ ԼՈՒՍԱՆՈՅՇ ՏԻԿ. (ծն. Դաւիթեան).— Ծնած է Կէրմիր 1893 Ապրիլ 12ին և նախակրթութիւնը ստացած՝ իր ծննդավայրին մէջ և յետոյ մտած է Թալասի Ամերիկեան Աղջկանց վարժարանը, ուրկէ շրջանաւարտ եղած է 1908ին, և ստանձնած՝ Մունճուսունի բողոքական վրժ.ին ուսուցչուհիութիւնը։ Յետոյ գացած է Գոնիա, իբր Աւետարանիչ։ Տարագրութեան օրերուն օգտակար եղած է Հայ զինուորներուն և Հայ որբեր փրկած է։ Այժմ Ամերիկա հաստատուած։



ԵԷՄԷՆՃԵԱՆ ՄԻՔԱՅԷԼ.— Ծնած է 15 Օգոստոս 1879ին Կ. Պոլիս Կեսարացի ծնողքէ և մանկութեան հասակին դարձած Կեսարիա ուր Կիւմշեան վրժ.ի մէջ՝ Նախակրթութիւնը, և Ս. Կարապետի Բարձր. վարժարանին մէջ՝ երկրորդական կրթութիւնը առած է։ Իբր Գ. Խասեան սան Ա. կարգի վկայականով դպրոցը աւարտելէն անմիջապէս յետոյ ըստ իր յանձնառութեան մտաւ ուսուցչական ասպարէզ և 1896էն 1901 Կիւմշեան վրժ.ի մէջ պաշտօն վարեց։ 1901ին գնաց Բարիզ, ուր տպագրատան մը մէջ աշխատելով հանդերձ, իր ուսումը կատարելագործեց։ Յետոյ կ'անցնի Ամերիկա ուր կը զբաղի դերձակութեամբ։ Կեսարիա գտնուած ատեն գրական աշխատութիւններ ունեցած է որոնք սակայն փճացած են։ Աշխատակցած է 1897ին Արեւելեան Մամուլին ուր հրատարակուած են իր մի քանի գրական էջերը և 1897-99ին Լէյաքիմ ստորագրութեամբ թղթակցութիւններ ունի Արեւելքի և Սուրհանդակի մէջ։

ԵՐԼԱՆՁԵԱՆ ԳԷՈՐԳ.— (Այս անունով երկու ուսուցիչներ ունեցած է Կեսարիա, իրարու զարմիկ: Անոնցմէ մին իր ուսուցչական պաշտօնին մէջ գողութեամբ բռնուած, հարկադրուած է հեռանալ Կեսարիայէն եւ երթալ Ազիզիյէ՝ առեւտրական դառնալու համար եւ 1915ին Կեսարիա գալով՝ մատնիչի ու դաւաճանի դժխեմ դերը կատարած: Միւսը՝ ամօթէն իր կապը խզելու համար իր մականունը վերածած է 1908էն յետոյ ՎԻՇԱՊԵԱՆի. *տես իր մասին ըստ կարգին*)։



ԵՐԼԱՆՁԵԱՆ ՆԱԶԱՐԷԹ (*յետոյ* Տ. ՅԱԿՈԲ ՔՀ.).— *Գէրմիրցի. Նախապէս Պարթեւեանի վարժարանի աղջիկներու բաժինին ուսուցիչ։ Յետոյ ձեռնադրուած քհ. և պաշտօնավարած է իր ծննդավայրը և գլխաւոր քաջալերողը և ձեռնտուն եղած է վարժարանին զարգացման, Սահակեան եղբայրներու հետ։*

ԵՐԼԱՆՁԵԱՆ ՍԵՐՈՎԲԷ Յ.— *Կէրմիրցի, որբ. սան Թիֆլիս հաստատուած առեւտրական Սերովբէ Կիւլպէնկեանի։ Ս. Կարապետի Բարձր. վարժարանը աւարտելէ յետոյ ուսուցիչ եղած է իր ծննդավայրին վարժարանին մէջ երկար տարիներ։*

ԵՐԼԱՆՁԵԱՆ ԿԱՄ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ՍՏԵՓԱՆ ՊԱՏՈՒԵԼԻ.— *Կէրմիրցի, երկու անթացուպով քալող կաղ, բայց պատկառելի, ծանրաբարոյ, խիստ կարգապահ ու ազդեցիկ անձնաւորութիւն մը, որ ինքն կ՚աւանդէր բացի Թուրքերէնէն մնացեալ գրեթէ բոլոր դասերը, Կէրմիրի վարժարանին մէջ 1862էն սկսեալ իբր տնօրէն։ Չէ յիշուած թէ Ստեփան պատուելի ո՞ւր ստացած է իր ուսումը, սակայն հաւանական է որ առաւելապէս ինքնուս մըն էր։ 1866ին տնօրէնութենէն ելաւ և մնաց դասախօս։ 1873ին մեռաւ 12 տարի ծառայելէ և Պարթեւեան վարժարանի փայլ տալէ, և բազմաթիւ աշակերտներ հասցնելէ յետոյ։*

ԵՂԻԱԵԱՆ ԽԱՉԷՐ.— *Կէրմիրցի, աշակերտ տեղւոյն Պարթեւեան վարժարանին և ապա օգնական ուսուցիչ հոն և երաժշտապետ։ Յետոյ գացած է Գոնիա։*

ԵՂԻԱԶԱՐ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ.— *Ծնած է Էվէրէկ 1879 Յուլիս 22ին։ Իր նախակրթութիւնը ստացած է Կեսարիա ուր փոխադրուած էր հայրը 1881ին քահանայ ձեռնադրուելով Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ վրայ։ Հոն անցուցած է իր տղայութեան ու պատանութեան տարիները։ Նկարագրով յամառ ու ըմբոստ, կազմով ջղային և անրջապաշտ, աշակերտութեան շրջանը Կիւմշեան թաղային դպրոցին մէջ անցուցած է՝ իրեն գլխաւոր ուսուցիչ ունենալով Դանիէլ Պօյաճեանը։ 1895ին դպրոցը կ՚աւարտէ և այնուհետեւ ուսին բարձած շրջիկ հայու ճակատագիրը, ուսուցիչի պաշտօն կը վարէ Կեսարիա Կիւմշեան վարժարանին մէջ, Գըրշէհիր, Ագսարայ, Զանկըր, Էնկիւրիւ, 16 տարի շարունակ։ Իր իսկ խոստովանութեամբ վաղեմի անմեղուակ հովուերգութեան մը յիշատակը 1906ին զինքը դէմ առ դէմ կը բերէ անոր (Օր. Վեհանոյշ Վէզիրեանի) հետ որ իր կինը պիտի ըլլար և որ զինքը երջանիկ պիտի ընէր այնքան որքան եղած են երբեք աշխարհի ամէնէն բախտաւոր ամուսնացածները։*

*1912ին դղրդալից պարագաներու տակ հրաժեշտ տալով իր ուսուցչական վերջին կայանին — Էնգարէ — անցաւ Իզմիր, ուր 8 տարի անընդմիջաբար հաշուակալ-գրագիրի պաշտօն վարեց ամենատաժանքոտ բայց նաև ամենահետաքրքրաշարժ պարագաներու տակ որ պատերազմին բերմունքով զինքն շրջապատած էին։ 1920ին ինքզինքն և ընտանիքը նետեց Ամերիկա ուր հացի ի խնդիր ենթարկուած տաժանքները մէկ կողմէն, իսկ տասնեւութամեայ իր զաւկին՝ Վազգէնի կորուստը միւս կողմէն, խանգարեցին իր առողջութիւնը։ Հուսկ ուրեմն ցաւով և հեծութեամբ մեռաւ՝ դեռ իր զաւկին մահուան տարին չլրացուցած 25 Նոյեմ. 1928ին։ Հայկաբան ուսուցիչ, նկարագրելու շնորհ և գեղեցիկ ոճ ունի, ինչպէս տեսնուեցաւ գիրքիս մէջ ագուցուած իր նկարագրականներէն։ Ունի տպուած բանաստեղծութեանց հատոր մը Կ. Պոլիս 1901ին,* «Կոկոններ» *անունով, Իզմիր՝* 1919ին «Հայ Հոգիին Խորանը», «Դժոխքի մէջ գիշեր մը», «Կտակը»: *Իր կնոջը քով կը գտնուին, իր ձեռագիր աշխատասիրութիւնները,* «Արգէոսի Անգղը», *և Ամերիկահայ կեանքէ առնուած* «Խոստում» *վէպը։ Աշխատակցած է* Արեւելեան Մամուլին *և* Կռունկին*։ Իր գլխաւոր և ապրող գործը ըլլալու սահմանուած էր* «Կեսարիոյ Պատմութիւնը» *որ կիսատ մնացած է, ինչպէս ըսած եմ։ Այս հատորին մէջ օգտուած եմ իր ձեռագիրէն, զայն գրեթէ ամբողջապէս ներմուծելով։ Ուշադիր ընթերցողը անշուշտ դիտած է թէ ինքն տեղագրական-նկարագրական*



ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ԵՂԻԱԶԱՐ



ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ

բաժինը կրցած էր գիրի առնել, մնացեալը յետոյ լրացնելու յառաջադրութեամբ, ինչ որ չէր կրցած մահը վրայ հասնելով։

ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ. — Ծնած է Էվէրէկ, 1878ին։ Եղբայր Նախորդին և անոր պէս դաստիարակուած Կիւմիւշեան վրժ.ի մէջ։ Դպրոցը աւարտելէ յետոյ եղած է ուսուցիչ Հայկեան վարժարանի մէջ հայերէնի և ազգ. պատմութեան 1901–1915։ Մաքուր բարոյականով, անբասիր, անմեղունակ երիտասարդ մը, սիրուած իր բոլոր պաշտօնակիցներէն։ Մանուկ հասակէն ազդուած Զէլլոյի և Ժիրայրի յեղափոխական քարոզութիւններէն՝ կը մտնէ Հնչակեան կուսակցութեան մէջ և կը մասնակցի զանազան պատգամաւորական ժողովներու և Կիլիկիոյ եղեռնին՝ Կեսարիոյ ինքնապաշտպանութեան գործին՝ Ազատ Ոստանիկի հետ։ Ատենադպիրն էր Կեսարիոյ Հնչակեան մասնաճիւղին։ 1915ին ձերբակալուած տարուեցաւ Կ. Պոլիս ուր Պատերազմ. Ատեանի վճիռով կախաղան հանուած 20ներէն մին եղաւ 15 Յունիս 1915ին։

ԽՍԱՅԵԱՆ ՅԱԿՈԲ.— Կէրմիրցի, աշակերտ Ս. Կարապետ վարժարանի, ուրկէ շրջանաւարտ եղած է 1896ին։ Հմտավարժ և վաստակաւոր ուսուցիչ որ երբեմն տնօրէնութեան պաշտօն վարած է իր ծննդավայրին Պարթևեան վարժարանին մէջ, ինչպէս նաև Ագսարայ։ Դաշնակցական, և կախաղան բարձրացած Կեսարիոյ մէջ 20 Օգոստ. 1915ին, ըստ Արիս Դալֆայեանի իրեն անուանակից ուրիշի մը տեղ։

ԽՍԱՅԵԱՆ ՇԱՒԱՐՇ Յ. — Ծնած է Թալաս 1850ին։ Ուսած է Երուսաղէմի Ժառանգ. վարժարանին մէջ և յետոյ իբր ուսուցիչ և տեսուչ պաշտօնավարած է Կ. Պոլիս, Իզմիր, Մաղնիսա, Էտիրնէ, Ռոտոսթօ, Ատանա, Հալէպ և ի վերջոյ իր ծննդավայրը՝ Թալաս որուն Վարդ-Պատրիկեան վրժ.ին տնօրէնը եղաւ 1889 – 1893ին։ Փոքր Հայքի դէպքերուն բերմամբ 1893 Յունվ. 1ին կը ձերբակալուի։ Էնկիւրիւի Պատերազմ. Ատեանէն կը դատապարտուի եօթը տարի բերդարգելութեան և կ՚աքսորուի Հռոտոս։ Ընդհ. Ներումէն օգտուելով կը դառնայ Թալաս և կրկին իր պաշտօնը կը վերստանձնէ վարժարանին։ 1986ին իր կինն ալ միասին կրկին բանտարկուեցաւ։ Տիկ. Վառիկ 1 տարի յետոյ ներման արժանացաւ իսկ ինքն մահուան դատապարտուեցաւ, սակայն Օրմանեան պատրիարքի ջանքերով ներման արժանացաւ։ Պ. Շ. Եսայեան անկէ յետոյ զբաղեցաւ գորգի կարներ շինելով և մեծապէս գնահատուեցաւ։ Կեսարիոյ կառավարիչ Նազըմ փաշա զինքը քաջալերեց և հովանաւորեց։ Իր հսկողութեան տակ պատրաստուած գորգ մը իբր Կեսարիոյ քաղաքապետութեան նուէրը





Սուլթան Համիտի մատուցուեցաւ։ Կարմիր Սուլթանը այս առթիւ Նազըմ փաշան Տիարպէքիրի կուսակալ կարգեց և ան՝ Շաւարշը հետը տարաւ և Տիարպէքիրի Թրք. արհեստանոցին տնօրէն կարգեց։ 1904ին Նազըմ փաշայի հետ տեղափոխուեցաւ Հալէպ, ուր կ՚ապրի ցարդ, նկարչութեամբ զբաղելով։ «Օչին» ծածկանունով գրութիւններ գրած է։ Ինքն խմբագրած է «Բռնութեան դէմ— Գաղաթիայի Դատավարութիւն» տետրակը (Թ. 10, հրատարակութիւն Հնչակ կուսակցութեան, Աթէնք, 1894)։

ԵՐԿԱԹԵԱՆ ԵՐՈՒԱՆԴ (յետոյ Տ. Աշոտ քհ.).— Ծնած է 27 Սեպտ. 1854ին Ակն։ Մկրտութեան անունով Գէորգ-Երուանդ և իսկական մականունով Խըզարճեան։ Ինքն նախապէս գործածած է Թիմուրեան և յետոյ վերածած է Երկաթեանի։ Իր մայրը Խաչենց և Դշխոյենց ազգատոհմէն՝ Սրբուհի, ծանօթ էր Ակնայ բանահիւսութիւններով (տես Բիւրակն հանդէս)։ Նախնական կրթութիւնը ստացած է իր ծննդավայրին Ներսէսեան դպրոցը, յետոյ Կ. Պոլիս պանդխտելով՝ ուսումը շարունակած է և յամառ աշխատութեամբ ինքզինքն զարգացուցած է և կրթական ասպարէզին նուիրուած, իբր ուսուցիչ պաշտօնավարելով նաև իր ծննդավայրը Ակն (1872–1874) և ապա Կ. Պոլիս Հովեաններու տունը (1875-1878), Գարթալ (1879–1882), Թօփ-Գաբու (1882–1883)։ Յետոյ Կ. Պոլիս գտնուող Էվէրէկցիք զինքն հրաւիրած են Էվէրէկ (1883), իբր Ազգ. վարժ.ին տնօրէն։ Էվէրէկ ոտք դրած օրը ազգային տօնական օր մը եղաւ։ Ժողովուրդը կը դիմաւորէր համակրելի դէմք մը, տարազովը, ուսումովը, քաղաքավարութեամբը նոր դէմք մը։ Իսկ քանի մը օր վերջը հիացմամբ նկատեցին նաև թէ ան դպրոցավարական իր դրութեամբ ալ նոր դէմք մըն էր, վասնզի անոր մուտքովը Փալախան, Նարեկը, և հին դպրոցի յայտարար երեւոյթները անյայտացած էին դպրոցէն։ Այսպէս Երուանդ Երկաթ Էվէրէկի մէջ ունեցած իր պաշտօնավարութեան շրջանին — որ երեք տարի տեւեց ( 1883 - 1886 ) — կը դնէ հիմը նոր դպրոցի մը որ աւելի կամ նուազ յաջող տեւականութիւն մը պիտի ունենար մինչև համաշխարհային պատերազմին առաջին տարիները։ Ասկէ զատ ան ժողովուրդն ալ ընտելացուց Սահմանադրութեան օրէնքներուն, վասնզի ինքն էր որ կազմեց առաջին Թաղական Խորհուրդը և Հոգաբարձութիւնը, եկեղեցին ու դպրոցը փրկելու համար կամայականութիւններէ։ Իր Տիկինն ալ ուսուցչուհի էր աղջիկներու դպրոցը։



1886ին տեղափոխուեցաւ Կեսարիա, ուր պաշտօնավարեց Կիւմշ-

եան վարժարանի մէջ և ապա եղաւ նախ տնօրէն Յակոբեան վարժ.ի և ապա Հայկեանի (1889) և ապա ուսուցիչ Միացեալ Ուսումնարանի, մինչև 1892, երբ դարձաւ Կ. Պոլիս ուր պահ մը Պալենց գրատան մէջ պաշտօնավարելէ յետոյ Գատըքէօյի Արամեան վարժ.ի մէջ ուսուցիչ եղաւ (1894–1895)։ Նոյն տարին դարձաւ Կեսարիա ստանձնելու համար Ս. Կարապետի տնօրէնութեան պաշտօնը որ միայն վեց ամիս վարեց (1895–1896)։ Յետոյ փոխադրուեցաւ քաղաք ուր 1896էն 1904 ութը տարի Կիւմշեանի տնօրէնութիւնը վարեց դասախօսելով Միացեալ Ուսումնարանի մէջ։ Յետոյ ընտրուեցաւ տնօրէն Ամասիոյ վարժարանին (1904–1905) և 1905-1908՝ Կեսարիոյ Արամեան վարժարանի։ Յետոյ նոյն պաշտօնը վարեց Կեսարիոյ Հայկեան վարժարանին մէջ (1910–1911) և հուսկ ուրեմն՝ Միացեալ Ուսումնարանին մէջ (1913–1915)։

Զանազան ժամանակներու մէջ անդամակցած է Կեսարիոյ Ուսումնական Խորհուրդին, Գաւառական և Կրօն. Ժողովներուն։ Երկար ատեն եղած է Բիւզանդիոնի Կեսարիոյ թղթակիցը և աշխատակիցը։ Ունի բազմաթիւ գրութիւններ Թրքահայ մամուլին մէջ։

Երուանդ Երկաթ տեղի տալով Կեսարահայոց և Տրդատ եպ. Պալեանի թախանձքին 25 Փետր. 1906ին կը ձեռնադրուի քահանայ, սակայն առանց հեռանալու կրթական ասպարէզէ ինչպէս տեսանք, և Աստուծոյ տան ծառայելու չափ նուիրական նկատելով իր սպասարկութիւնը «լուսաւորութեան տաճար»ին՝ որուն ուխտեալ քուրմն էր իրաւամբ։ Պատրաստած էր Դեղագրութեան ընթացք մը, ճառեր, հուսկբանք, քարոզներ, երգեր և քերթուածներ, մեծ մասամբ անտիպ։ Վարած է Առաջն. Փոխանորդութիւնը 1912ին, նաև Առաջնորդարանի քարտուղարութիւնը։ Նրբամիտ, ճարպիկ ու համակրելի դէմքով այս քահանան որ հմուտ էր հին ու նոր հայերէնի, թուրքերէնի և դպրոցավարութեան, իր մանկավարժական կարողութեամբ Կեսարիոյ Ազգ. վարժարանաց բարեկարգիչներէն մին հանդիսացած է և սերունդներ կրթած։ Այս արդիւնաւոր քահանան 1915ի չարաղէտ օրերուն ինքն ալ կը ձերբակալուի և կ'ենթարկուի բանտային խոշտանգումներու, ամբաստանուելով պատերազմական Ատեանէն թէ պայթուցիկ նիւթեր պահած էր։ Դատավարութեան ընթացքին իր անմեղութիւնը երեւան ելլելով՝ կ'աքսորուի Սեբաստիա։ Հոն հասնելուն զոհ կ'երթայ բարբարոսութեանը կուսակալ Մուամմէր բորենիին որ կը գլխատէ զինքը քաղաքէն դուրս տեղ մը։ Եւ այսօր ո՛չ ոք գիտէ թէ ո՞ւր ցրուած են նշխարները մեծանուն դաստիարակին...։

ԶԱՐԴԱՐԵԱՆ Տ. ՄԱՐՏԻՐՈՍ ՔՀ. (Տես կենսագրութիւնը էջ 957).— 25 տարի ուսուցչական պաշտօն վարած է մասնաւորապէս Հայկեան վարժարանի մէջ որուն տնօրէնութիւնն ալ պահ մը (1875) ըրած է։

ԶԱՐԴԱՐԵԱՆ ՏՐԴԱՏ ՎՐԴ.— Ծնած է Ֆէնէսէ 1874ին։ Աշխարհական անունով Մամաս։ Ժառանգաւոր աշակերտ Ս. Կարապետի որուն շրջանը կ'աւարտէ 1900ին և վարդապետ կը ձեռնադրուի 1900 Մայիս 28ին Տրդատ եպ. Պալեանէ իբր միաբան Ս. Կարապետի։ Դասախօսած է հայերէն և կրօն Ս. Կարապետի բարձր. վարժարանին մէջ։ Հիւանդանալով կ'երթայ իր ծննդավայրը ուր կը վախճանի 11 Յուլիս 1911ին։

ԷԼԻՊԷՕՅԻՔԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (յետոյ բժիշկ).— Կեսարացի. Գէորգ Էտեան սան Ս. Կարապետի վարժարանին մէջ որուն շրջանը կ'աւարտէ 1896ին և 1896–1901 Կեսարիոյ Կիւմշեան վարժարանի մէջ դասատուութիւն ընելէ յետոյ կ'երթայ Պէյրութ բժշկական վարժարան, և կը վկայուի բժիշկ։



ԷԼԻՔԻՒՋԵԱՆ (ՀԱՄԲԱՐՁՈՒՄ) ԱՐՄԵՆԱԿ.— Զօմախլուցի, ուսուցիչ և ձայնաւոր դասատու ծննդավայրին Վերի Թաղին։ Աշակերտ «Վարժապետ»ին։ 1914ին իբր Բարեգործականի անդամ և իբր մտաւորական ձերբակալուելով բանտի տառապանքները ճաշակելէ յետոյ Կեսարիայէն կը տարագրուի Տէր-Զօր, ուր ջարդին զոհ կ'երթայ։

ԷՀՎԷՆ ԽԱԼՖԱ.— Տրեար ծառի մէջ «Դարա Մէրճան» կոչուած վարժապետին գործը շարունակած է այս վարժապետը, որուն բուն անունը կորսուած է և միայն պահուած է ժողովուրդէն իրեն տրուած այս մականունը որ աժաճ կը նշանակէ։ Այս անունը իրեն տրուած էր, վասնզի իր ժամանակը թուղթը նուազ և սուղ ըլլալուն այս վարժապետը իր աշակերտներուն գիրի վարժութիւն ընել տուած է թիթեղներու և մասնաւորապէս կովի թիկոսկրներու վրայ, որոնք այնքան առատ էին Կեսարիոյ մէջ՝ ապխտագործութեան պատճառով, քանի որ ամէն տարի հազարաւոր կովեր կը մորթուէին։

ԷՎԷՐԷԿԼԵԱՆ ՅԱԿՈԲ.— Կեսարացի, աշակերտ Կիւմշեան վարժարանի, և ապա հոն ուսուցիչ։ Տարագրուած է Դամասկոս, և վերապրող։

ԷՔԻՋԵԱՆ ԳԱԲՐԻԷԼ, ՆԱԶԱՐԷԹ ԵՒ ՍԵԴՐԱՔ.— Երեքն ալ Զօմախլուցի և ուսուցչութիւն ըրած իրենց ծննդավայրին մէջ։ Գաբրիէլ ուսած էր Թոմարզա և Նազարէթի նման երաժիշտ – ուսուցիչի պաշտօն վարած (1887)։ Ազգասէր և բարի անձնաւորութիւն մը։ Մեռաւ Կեսարիոյ բանտը։ Իսկ վերջինը՝ առանձին վարած է Կրթասիրացի փոքրիկներու վարժարանը։ Աքսորի տառապանքները կրելէ յետոյ, 1919ին Սիհուն գետէն անցնելու ատեն գետամոյն եղաւ։



Գ. ԷՔԻՋԵԱՆ

ԷՕՐԷՃԵԱՆ ԳՐԻԳՈՐ.— Հաճընցի. որբ. սան Թահթապուրունեան եղբայրներու։ Շրջանաւարտ Ս. Կարապետի վարժ.էն (1903)։ Տարի մը իր ծննդավայրը ուսուցչութիւն ընելէ յետոյ, Ս. Կարապետի Բարձր. վարժարանին հայերէն լեզուի օգնական ուսուցիչ եղաւ։ 1907ին Ատանայի Ազգ. վարժարանին մէջ կը պաշտօնավարէր։ Աշխատակցած է Սուրհանդակի։

ԹԱԳԻՈՐԵԱՆ ԳԱԲՐԻԷԼ.— Ֆէնէսէցի, և աշակերտ Սէմիզեանի և Պալեանի։ Եղիազարեան կ'ըսէ թէ «իր ինքնօգնութեամբ շինած է հմտութիւն մը որ քիչերու վրայ տեսնուած է»։ Պաշտօնավարած է Ֆէնէսէի Ռուբինեան վարժարանի մէջ նախ իբր ուսուցիչ (1900-1905) և ապա իբր տնօրէն (1905–1908)։ Յետոյ անցած է Կեսարիա, ուր ստանձնած է Կիւմշեան վարժարանի տնօրէնութիւնը (1908–1911)։ Հոն կը դասախօսէր նաև հայերէն, ֆրանսերէն և գիտութիւն։ 1911ին կրկին տնօրէն կը կարգուի Ֆէնէսէի վարժարանին։ Կինը՝ Տիկ. Դալիանէ որ կը պաշտօնավարէր աղջիկներու վարժարանին մէջ կը հիւանդանայ և այս պատճառով կը տեղափոխուին Թալաս ուր Վարդ-Պատրիկեան վարժարանին տնօրէն կ'ըլլայ (1912)։ 1914ին կ'երթայ

Կ. Պոլիս և Սկիւտար Ս. Խաչ վրժ.ի տնօրէն կ'ըլլայ։ 1915 Ապրիլին ձերբակալուելով կը տարուի Էվէրէկ, և անկէ Կեսարիա, ուր 1916ին Պատեր. Ատեանը 15 տարուան բերդարգելութեան կը դատապարտէ զինքը, իբր յեղափոխական։ Արդարև ինքն մէկն էր Կեսարիոյ Հ. Յ. Դաշնակցութեան կարկառուն դէմքերէն։ Պատերազմին տեւողութեան կը մնայ բանտարկուած բերդին մէջ։ Զինադադարին արձակուած կը դառնայ Կ. Պոլիս, ուր Խնամատարութեան Գաղթականաց բաժինին դիւանապետ կ'ըլլայ (1919–1920)), յետոյ Կէտիկ փաշայի Մեսրոպեան վարժ.ի տնօրէն (1920–1923)։ 1923–27 Աղեքսանդրիոյ Պօղոսեան վրժ.ի փոխ-տնօրէն։ Հիմա Աղեքսանդրիա է։

ԹԱԴԷՈՍԵԱՆ ՅԱԿՈԲ.— Զօմախլուցի և աշակերտ «Վարժապետ»ին։ Ուսուցիչ Զօմախլուի Վերի Թաղին և Գարաճա-էօրէնի։ 1917ին մեռած է տարագրութեան մէջ ի Նիգիպին։

ԹԱՇՃԵԱՆ ԹԱԳՈՒՀԻ (ՕՐ.).— Կեսարացի, քոյր կախաղան բարձրացող փաստաբան Կարապետ Թաշճեանի։ Արամեան վարժարանի մէջ ուսուցչուհի։ Մեռած է տարագրութեան մէջ։

ԹԱՇՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Կեսարացի, որբ, սան Թահթապուրունեան եղբարց։ Ա. կարգի վկայականով Ս. Կարապետի վարժ.ի շրջանը կ'աւարտէ 1903ին, և կ'ստանձնէ ուսուցչական պաշտօն Կեսարիոյ Յակոբեան վարժարանին մէջ (1903–1907)։ Յետոյ կը հետեւի Կ. Պոլսոյ իրաւագիտական վարժարանին և իբր փաստաբան կը հաստատուի Գոնիա։ Գէորգ Ըլլանճեանի մատնութեամբ, իբր նախկին անդամ Կեսարիոյ Դաշնակցական քօմիթէին, Գոնիայէն կը բերուի Կեսարիա և 1915 Սեպտ. 13ին կախաղան կը հանուի։

ԹԱՇՃԵԱՆ ՀԱՅԿԱԶՈՒՆ.— Կեսարացի, ուսումը առած է Կիւմշեանի մէջ և ապա հոն ուսուցիչ եղած (1900–1915)։ Ընդհ. պատերազմին կը զինուորագրուի և կը նահատակուի։

ԹԱՇՃԵԱՆ ՄԵՍՐՈՊ. — Կէրմիրցի, և աշակերտ տեղւոյն Պարթեւեան վարժարանին (1873–76)։ Յետոյ ընդգրկած է ուսուցչական ասպարէզ, և մասնաւորապէս Կեսարիոյ Յակոբեան վարժարանին մէջ պաշտօնավարած է երկար ատեն։

ԹԱՇՃԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ.— Հայրենակից և աշակերտակից Նախորդին։ 1880ական թուականներէն սկսեալ Հայկեան վարժարանի մէջ կառավարիչի և եկեղեցւոյ մէջ՝ երաժշտապետի պաշտօնը վարած է։ Վերջն ալ Յիսուսեանց վարժարանին մէջ հայերէնի և թուրքերէնի դասախօս եղած է։

ԹԵՐԶԵԱՆ ԲԱՐՍԵՂ.— Կեսարացի, Գ. Էսաեան սան։ Շրջանաւարտ Ս. Կարապետէն 1894ին։ Երկու տարի Կեսարիոյ մէջ ուսուցչութիւն ընելէ յետոյ գացած է Նիւ-Եորք և առեւտրական գործով զբաղած։

ԹԵՐԶԵԱՆ ՄԻՀՐԱՆ (յետոյ Տ. ԴԻՈՐԴ ՔՀ.).— Կ. Պոլսեցի։ Նախ ուսուցիչ Փանոսեանի հիմնած Ազապեան վարժարանին և ապա Միացեալի Տրապիզոնի և այլ վարժարաններուն մէջ։ Պաշտօնավարած է նաև Թալասի Վարդ-Պատրիկեան վարժարանը երկու շրջաններու։ 1893–94ին Կեսարիոյ Հայկեան վարժարանը կը դասախօսէ։ 1 Հոկտ. 1894ին Սանտալճեան եպ.է քահանայ կը ձեռնադրուի Գըրշէհիրի Ս. Գէորգ եկեղեցւոյն վրայ։



ԹԷՔԷԵԱՆ ՎԱՀԱՆ.— Ծնած է Կ. Պոլիս, Օրթաքէօյ 1878 Յունուար 21ին (Հ. Տ.) Կեսարացի ծնողքէ, որոնք շատոնց Կ. Պոլիս հաստատուած էին։ Իրենց վերջին զաւակն էր։ Նախ յաճախած է Սկիւտար-Իճատիէի մէջ վարպետ-տատուի մը, յետոյ Թաղին Ներսէսեան վարժարանը, յետոյ Պէրպէրեան և ի վերջոյ Կեդրոնական (1891-1894) Մոստիչեանի տնօրէնութեան օրով։ 1894էն 1896, սկսնակ գրագիր Պոլիս ապահովագրական ընկերութեան մը գրասենեակը։

1896ի սկիզբները կը մեկնի Լիվրբուլ, յետոյ կ'անցնի Մարսէյլ, յետոյ Համպուրկ և յետոյ Եգիպտոս, ուր տեղերը զբաղած է առեւտրական գործերով։ 1902ին Կ. Պոլիս դառնալ կ'ուզէ, սակայն 15 օր բանտ պահուելէ յետոյ կը դարձուի Մարսէյլ։



Դպրոցէն ելլելէն ետքը, Կ. Պոլսոյ մէջ քիչ մը ատեն յանդամագրուած է Հնչակեան կուսակցութեան, իսկ Եւրոպայի մէջ բոլորովին հեռու մնացած կուսակցականութենէ։

Եգիպտոս երբ կուգայ Վեր. Հնչակեանութեան կը յարի սակայն հազիւ տարի մը յետոյ կը խզէ իր յարաբերութիւնները այդ կուսակցութեան հետ, Ունճեանի սպանութեան պատճառով։ 1908ին երբ Օսմ. Սահմանադրութիւնը կը հռչակուի, կուսակցութիւնը զտուած ըլլալով արդէն, կրկին միացած հին ընկերներէն շատերուն, Պոլիս կը դառնայ Միհրան Տամատեանի հետ, իբրև Վեր. Հնչակեան։ Քանի մը ամիս յետոյ այս կուսակցութիւնը կը ձուլուի նորակազմ «Հայ Սահմանադրական Ռամկավար կուսակցութեան» մէջ, որով ինքն ալ կ'ըլլայ Ռամկավար և յարդ է, հակառակ անոր որ մէկ երկու անգամ անկէ հեռացած և դարձած ըլլայ։

1908ին ընտրուեցաւ Ազգ. Երեսփոխան Եգիպտոսի և պահեց այդ պաշտօնը մինչև 1922 վերընտրութեամբ։ Մէկ շրջան Ատենադպիր Ազգ. Ժողովի։

1911ին իբր կաթողիկոսական պատուիրակ գնաց Էջմիածին և մասնակցեցաւ Գէորգ Ե.ի ընտրութեան։ 1912–1913ին նախ Հարստահարութեանց և ապա Ապահովութեան խորհրդարանական Յանձնաժողովներուն անդամ եղած է։

1912ին Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի գրասենեակի տեսչութիւնը վարեց։ 1913 Սեպ.ին ստանձնեց Կեսարիոյ Ս. Կարապետի վարժարանին տեսչութիւնը որ հազիւ կրցաւ վարել վեց ամիս վասնզի Ազգ. Ժողովը զինքը ընտրեց Միայուն Ներկայացուցիչ Երուսաղէմի վանքին

մէջ, ըստ Ազգ. Ժողովէն 1913 Դեկտ. 20ին ընդունուած կանոնագրին որուն տրամադրութեան համաձայն Երեսփոխանութենէն ընտրուած ներկայացուցիչ մը, Երուսաղէմ պիտի գտնուէր, իբր ժողովներու և գործոց ընթացքին հսկող։

Վահան Թէքէեան Կեսարիայէն Կ. Պոլիս գալով վարչութենէն ընտրուած Լիազօր պատուիրակ Մաղաքիա Արքեպ. Օրմանեանի հետ կ'ուղեւորի Երուսաղէմ ուր կը հասնի 1914 Մայիս 19ին, սակայն չի կրնար երկար մնալ, պատուիրակին հետ անհամաձայնութիւն ունենալով, և երկու ամիս յետոյ կը մեկնի Եգիպտոս, ուրկէ յարեւորը կը տեղեկացնէ Ընդհ. Ժողովին, հրահանգի սպասելով։

1914 Օգոստոս 1ին Ընդհ. պատերազմը պայթելով Թէքէեան կը մնայ Եգիպտոս և այսպէս կը փրկուի թրքական եղեռնէն։

1917ին Հայկական Լեգէոնի գործերով կ'զբաղի Բարիզի Ազգ. Պատուիրակութեան մօտ, որուն կողմէ կը ղրկուի Երուսաղէմ, անգլիական գրաւման առթիւ իրաց նոր կացութեան մասին խորհրդակցելու համար Միաբանութեան հետ (1918)։ Երուսաղէմէն դարձին Եգիպտոսի Ազգ. Միութեան կողմէ Բարիզ կը ղրկուի մասնակցելու համար Համագումար Ժողովին և անդամ կը նշանակուի անկէ ընտրուած Ազգ. Պատուիրակութեան (1919)։

1919ին Երեւան կը ղրկուի Միացեալ Հայաստան հռչակման Մայիս 28ի աճբին առթիւ՝ իբր բանագնաց, ընկերակցութեամբ Նշան Տ. Ստեփանեանի, սակայն դժբախտաբար ապարդիւն կ'ըլլայ իր պաշտօնը։ 1920ին կը դառնայ Կ. Պոլիս ուր կը վարէ պահ մը Ժողովուրդի Ձայն լրագրին խմբագրապետութիւնը, և ի վերջոյ Ազգ. Կեդրոնական վարժարանի տնօրէնութիւնը (1922-1923)։

1922ի վերջերը՝ Քէմալականներու Կ. Պոլիս մտնելէն քիչ առաջ կը մեկնի Պուլկարիա և յետոյ Յունաստան, ուր Ազգ. Պատուիրակութեան յանձնարարութեամբ կ'այցելէ գաղթակայանները և մանաւանդ որբանոցները, անոնց կացութիւնը քննելու համար։ Յետոյ կ'այցելէ Եգիպտոս և Եգիպտահայ գաղութին կը ներկայացնէ որբերու վիճակը և անոնց վրայ կը հրաւիրէ այս բարեկեցիկ գաղութին ուշադրութիւնը, և կ'անցնի Բարիզ ուրկէ կրկին կու գայ Եգիպտոս ուր կը հաստատուի 1924ին։

1925-27 Ատենապետ Գահիրէի Քաղ. Ժողովին, և յետոյ խմբագրապետ Արեւ օրաթերթին։ 1928ին մեկնեցաւ Ֆրանսա և 1930ին կրկին եկաւ Եգիպտոս, և 1931ին կրկին գնաց Ֆրանսա։ 1934ի վերջը գնաց ստանձնել Կիպրոսի Մելգոնեան հաստատութեան վարժապետանոցի բաժինին տեսչութիւնը և 1935ին վերջերը եկաւ կրկին Գահիրէ։

Ինն տարեկանէն սկսեալ գրել սկսած է ոտանաւորներ։ Պէրպէրեան վարժարանի մէջ հրատարակած է Սիւզ անուն ձեռագիր թերթ մը։ Իր առաջին տպագրեալ գրութիւնը լոյս տեսած է Հայրենիք օրաթերթի 1892 Յունուար 1ի թիւին մէջ։ Յետոյ յօդուածներ գրած է Տեսարանին։ Զօպանեանի Ծաղիկին մէջ ստորագրած է իր առաջին արձակ քերթուածը։ Աշխատակցած է Վաղուան Ձայնի (Մանչէսթըր), Անահիտի և Ժողովուրդին Համարի (Բարիզ), Արմէնիայի (Մարսէյլ)․ Ձայն Հայրենեացի (Ամերիկա), Արտեմիսի (Գահիրէ), Բանասէրի (Բարիզ), Ազգի (Ամերիկա), Բիւզանդիոն, Մասիս, Ծաղիկ, Մանզումէ, Սուրհանդակ, Ժամանակ, Արեւել-



եան Մամուլ, և Դաշինք (Իզմիր), Ազատ Բեմ, Ազատ Խօսք, Բարձրավանք, Արեւ, Լուսաբեր և Լուսաբեր-Արեւ թերթերուն։

Աղեքսանդրիոյ մէջ 1905ին, Միքայէլ Կիւրճեանի հետ կը հիմնէ Շիրակ ամսաթերթը, զոր տարի մը գլխաւոր աշխատակցութեամբ Արփիար Արփիարեանի հրատարակելէ յետոյ՝ կը փոխանցեն անոր որ իր կողմէ 9 թիւ հրատարակած էր Գահիրէի մէջ երբ սպաննուեցաւ (1908 Փետր. 8) Վեր. Հնչակեաններէն։ 1909ին Վահան Թէքէեան Շիրակը վերսկսաւ հրատարակել իբր շաբաթաթերթ Կ. Պոլսոյ մէջ ընդամէնը վեց ամիս։ 1907ին հրատարակած է Նոր Ժամանակներ անուն պզտիկ շաբաթաթերթ մը որմէ միայն 3 թիւ հրապարակ ելած է։

1909ին երբ Յովհաննէս Շահնազար վերսկսաւ Հայրենիքը հրատարակել Վահան Թէքէեան իբր խմբագիր գործակցեցաւ իրեն մինչև անոր փակումը։ Ինքն է հիմնադիրը Արեւի որ Աղեքսանդրիա հրատարակուիլ սկսած է պատերազմին սկզբնաւորութեան, իր խմբագրապետութեամբ։ 1926ին կրկին անոր խմբագրապետութեան կոչուեցաւ և զայն վարեց մինչև 1928, ուրկէ յետոյ մեկնեցաւ Բարիզ, և 1930-31ին կրկին եկաւ Եգիպտոս և Արեւի խմբագրապետութիւնը վերստանձնեց, ինչպէս 1935ին և ցարդ կը վարէ զայն։

1901ին Բարիզի մէջ հրատարակած է բանաստեղծութեանց հատոր մը՝ Հոգեր, 1914ին ուրիշ մը Կ. Պոլիս՝ Հրաշալի Յարութիւն, 1918ին երրորդ մը Բարիզ՝ Կէս Գիշերէն Առաւօտ և 1933ին չորրորդ մը դարձեալ Բարիզ «Սէր» անուններով։

Բայց իր իսկական անունէն գործածած է բազմաթիւ ծածկանուններ ինչպէս Բ. Կ. Մ., Սուրէն Տիրանեան, Վահան Տիրանեան, Վ. Տ., Նշան Հարցական, Յովհաննէս-Կարապետ, Ասուպ, Ասպատակ, Համշիրակ Բ. Սկայորդի, Իսկուհի Հովեան, Վէթօ, Խորէն Որոտում, Պում և այլն։

1935ին տօնուեցաւ իր 40ամեայ գործունէութեան յոբելեանը։

Արդի լաւագոյն բանաստեղծը, որուն արժանիքը հաւասարապէս և անվերապահ կը գնահատեն իր բարեկամները և հակառակորդները։ Կեսարացիի զաւակ, այս տեսակէտով իր հայրենակիցներու հպարտութեան և փառքին առարկան ըլլալէ զատ, անիկա գէթ կարճ ժամանակ մը ծառայած է Կեսարիոյ Հայոց ամենէն հոյակապ և ամենէն արժէքաւոր հաստատութեան՝ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին։ Նկատելի է որ գրագէտին առաջին տպուած յօդուածը՝ Հայրենիքի մէջ կեսարական մըն էր, Կեսարիոյ Կաղանդի սովորութիւններուն նուիրուած գրութիւն մը։ Իսկ իր Կեսարիա բնակութեան ժամանակամիջոցի ներշնչումներուն կը պարտինք իր մէկ բանաստեղծութիւնը՝ «Ս, Կարապետ Կեսարիոյ» (տես Կոչնակ Հայաստանի, 1930, էջ 885 կամ Սէր, էջ 38-39) և մէկ օրագրութիւնը (Կեսարիա երթուդարձի եւ բնակութեան օրագիր մը, 1913 Սեպտ.—1914 Յունուար) որ հրատարակուած է (Ժողովուրդի Ձայն, 1921, թ. 799-837) «ի յիշատակ Կեսարիոյ Ս. Կարապետ վանքի վարժարանին 1913-14 շրջանի այն բազմաթիւ աշակերտներուն, ուսուցիչներուն և խնամակալներուն, որոնք մեծ աղէտին մէջ անհետացան»։

ԹԻՄՈՒՐԵԱՆ ՅԱԿՈԲ (յետոյ Տ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ՔՀ.).— Ծնած է 15 Հոկ. 1875ին Կեսարիա։ Իր նախակրթութիւնը ստացած է Յակոբեան դըպրոցին մէջ, 15 տարեկանէն սկսեալ ուսուցիչ Կեսարիոյ և շրջակայից

մէջ։ Մասնաւորապէս 1897ին Էվէրէկ և 1899–1900 Ֆէնէսէ տնօրէնութիւն վարած է։ Նոր դպրոցի ամէնէն փայլուն դէմքերէն մին։ Դասախօսած է թուրքերէն, ֆրանսերէն, գիտութիւն և մաթեմատիկ։ Էվէրէկի լսարանը իր մէջ կը յայտնաբերէ բեմբասացի կարողութիւն, որով կը հրապուրէ Էվէրէկի ժողովուրդը։ Մեծ-Աղաները կ'սպառնան մտնել զինքը և զայն կը փախցնեն։ Ֆէնէսէէն կրկին կը դառնայ Կեսարիա և Կիւմիւշեան վարժարանի և 1903–1904ին Միացեալ Ուսումնարանի և 1904–1906ին դարձեալ Կիւմիւշեանի տնօրէնութիւնը կը վարէ։ 5 Մարտ 1906ին ձեռնադրուած քահանայ Տրդատ եպ. Պալեանէ Ս. Սարգիս եկեղեցւոյն վրայ։ 1913 Յունիսէն սկսեալ Առ. փոխ.։ Քահանայութեան ընթացքին ալ շարունակած է դասախօսութիւններ կրօնի և բարոյագիտութեան։ Անդամ Գաւառ. և Կրօն. ժողովոց։ Հեղինակ Գոհարներ Հայ Եկեղեցիէն հաւաքուած (աղօթագիրք և մեկնութիւն Ս. Պատարագի) գործին որ տպուած էր Կ. Պոլիս 1911ին և Բ. անգամ տպուած 1934ին Հմայեակ Ուզուրլեանի կողմէ։



Այս գործին մէջ որ երկլեզուեան է՝ հայերէն և թուրքերէն, նշանակելի են Առաւօտ Լուսոյ, Նայեաց սիրով, Աշխարհ ամենայն, Նորաստեղծեալ յանգաւոր ինչպէս նաև Հաւատով խոստովանիմ և Մեղայ Ամենասուրբ արձակ թարգմանութիւնները։ Ունէր նաև Կրօնքի փաստաբան անուն գործ մը որ մտադրած էր մամուլի յանձնել երբ Ընդհ. պատերազմը ծագեցաւ։ Աղէտի օրերուն ինքն ալ առարկայ կը դառնայ ոստիկանաց ուշադրութեանը որպէս լուսամիտ և երիտասարդ երէց։ Ծաֆէր Պէկի զարագօլին մէջ սոսկալի և հակամարդկային գանահարութիւն կը կրէ և ֆալախայի ենթարկուած իր ոտքերուն մէկ մասն ալ կը կորսնցնէ, վասնզի ամբաստանուած էր թէ ռումբ կը պահէր իր տունը կամ Ս. Սարգիս եկեղեցին։ Հակառակ ոևէ փաստի չգոյութեան, 10ամեայ բերդարգելութեան կը դատապարտուի, և 2 Սեպտ. 1915ին մի քանի ազգայիններու հետ ճամբայ կը հանուի դէպի Տիարպէքիր և Գաթմայէն անդին Ուրֆայի ճամբուն վրայ կ'սպանուի խժդժօրէն դպրապետ Փանոս Գուզուպաշեանի հետ։

ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ ԱԲՐԱՀԱՄ. — Կէրմիրցի և աշակերտ Յար. Նշանեանի որուն կը յաջորդէ իբր տնօրէն Պարթևեան վարժարանի 1876ին և եօթը տարի կը վարէ այս վարժարանին տնօրէնութիւնը։

ԹՈՒՐ ՍԱՐԳԻՍԵԱՆ ԳՈՒՐԳԷՆ. — Հաճընցի, շրջանաւարտ 1907ին Ս. Կարապետի վարժարանէն և յետոյ պատմութեան ուսուցիչ նոյն հաստատութեան մէջ։ Այժմ Կ. Պոլիս և 1930էն ի վեր տնօրէն Ազգ. Հիւանդանոցի։

ԹՕՇԻԿԵԱՆ ՍԱՐԳԻՍ.— Կեսարացի, Գ. Էսաեան սան։ Շրջանաւարտ



1896ին։ Ուսուցիչ, նախապէս Էֆքէրէ գիւղին ազգ. վարժարանին մէջ և ապա Կիւմիւշեանի մէջ։

ԹՕՓԱԼԵԱՆ ԳԷՈՐԳ.— Մարաշցի, Երուսաղէմի ժառանգաւորացէն, ուսուցիչ երաժշտութեան Ս. Կարապետ վանքի վարժարանին։

ԺԱՄԿՈՉԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (մականուանեալն ԿԻՒՆԿԷՕՐՄԷԶ).— Կեսարացի, Կեսարիոյ Հայ Բողոքական Բարձրագոյն վարժարանի ամենահին ընթացաւարտներէն (1887)։ Իր աւարտած դպրոցը քանի մը տարիներ իբր ուսուցիչ ծառայելէ վերջը, անցած է Կիւմիւշեան վարժարան և հոն պաշտօն վարած է մօտ 15 տարիներ իբր մաթեմաթիկի ուսուցիչ, իբր հսկող և վերջապէս իբր տնօրէն։ Դասախօսած է Միացեալ Ուսումնարանի (1903–1904) և Արամեանի մէջ իբր այցելու (1905–7)։ Պատերազմէն քանի մը տարի առաջ Գոնիա փոխադրուած և հաստատուած իր գործով։ Պատերազմի ատեն կը պաշտօնավարէր կրկին Արամեան աղջկանց վրժ.ի մէջ։ «Կենդանի թուաբանութիւնը» կ'անուանէին զինքը իր պաշտօնակիցները։ Բարութեան տիպար այս անձը տարագրութեան ճամբուն վրայ մեռած է ի Մա՛ան։

ԻՆԱՅԷԹԵԱՆ ՄԿՐՏԻՉ.— Կէրմիրցի, Գ. Էսաեան սան։ Աւարտած է Ս. Կարապետ վանքի վարժարանը (1896) և այդ թուականէն ի վեր գծագրութեան և աշխարհագրութեան ուսուցիչ էր Ս. Կարապետի վարժարանին մէջ։

ԼԱՉԻՆԵԱՆ կամ ԼԱՉԻՆ-ՕՂԼՈՒ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ կամ ԿԱՐՊԱՂԱ.— Հին դպրոցին պատկանող երկարամեայ աշխատաւոր մը որ Էվէրէկի մէջ ուսուցչութիւն ըրած է մինչև խոր ծերութիւն։ 1855ին վարժապետ կ'ըլլայ Էվէրէկի դպրոցին և առաջին անգամ կը կարգաւորէ դպրոցը։ Սաղմոս, Գործոց, Նարեկ կարդացնելէ զատ առանց դասագիրքի, թուրքերէն Րախամ ալ կը սորվեցնէր, որուն լրումն էր Ղարա Ճիւմլէն, Թէնզիլը, Ջարպը, Թախսիմը, փարան ղրուշի, ղուրուշը փարայի, տէրհէմը օխայի կամ ղանթարի վերածելը և ճահիզը։ Ան դաս կու տար նաև թուրքերէն նամակագրութեան։ Բարկացոտ մարդ մըն էր։ Լուսաբացին տղաք պէտք էր եկեղեցի գային։ Բացակաները ֆալախայով կը պատժէր։ Կարապետ Արմէն (Գալայճեան) որ աշակերտած է անոր կը պատմէ թէ «առաջին անգամ տուին ինձ տախտակ մը քառանկիւն ձեւով՝ որուն վրայ գրուած էին այբուբենի գիրերը մեծադիր, ժամանակ մը ետք տախտակը քերականի փոխուեցաւ եւ քերականը հեզարանի, որուն պարունակութիւնը կը կարդայինք մեքենաբար առանց բառ մը հասկնալու. աւելորդ է ըսել որ վարժապետը ինք ալ չէր հասկնար ու այդ իսկ պատճառով չէր ներեր որ մէկը իրեն հարցնէր այս կամ այն բառին իմաստը: Կը յիշեմ որ անգամ մը բառ հարցնելու յանդգնութիւնը ունեցայ, որուն իբր վարձատրութիւն գաւազանի երկու փառաւոր հարուած ստացայ ձեռքերուս: Գաւազանը իր միակ եւ սիրական մէթոտն էր եւ մոգական ոյժը՝ որուն վրայ հիմնուած էր իր ամբողջ մանկավարժութիւնը: Եթէ պատահէր որ յանցանք մը գործուէր սրահին մէջ կամ դուրսը, ու վարժապետը չյաջողէր գտնել բուն յանցաւորը, վա՜յ էր եկեր ամբողջ աշակերտութեան գլխուն, սրահին մէկ ծայրէն միւսը շարքը պէտք էր պառկէին, ոտքերնին վեր տնկած ու ընդունէին զայրացած վարժապետին գաւազանի անխնայ հարուածները իրենց մերկ ներբաններին վրայ: Սակայն զանակոծութիւնը չսկսած, շարքը սարսափահար կ'սկսէին լացուկոծի,

այս աղմուկին վրայ դրացի տուներէն բարի պառաւ մամիկներ օգնութեան կը հասնէին, կը միջամտէին եւ կ'ազատէին խեղճ անմեղ զոհերը»: Լաչինեան մինչև իր մահը (1912) դպրոցին կապուած է, վասնզի դպրոցը արգիլանալէն յետոյ ալ անիկա Ծաղկոցին մէջ կը դասախօսէր, և ատեն մըն ալ մանկապարտէզի տէտէ եղած էր, և վերջերն ալ տարեկան հինգ ոսկի թոշակով հանգստեան կոչուած։



ԼԱՉԻՆԵԱՆ կամ ԼԱՉԻՆ ՕՂԼՈՒ ՄԱՀ. ՅԱԿՈԲ.— Զարմիկը նախորդին և նոյն դպրոցին պատկանող պատուելի մը, որ երկար ատեն իբր ուսուցիչ պաշտօնավարած է Հայկեան վարժարանի և ապա աղջիկներու Հայկուհեան վարժարանի մէջ, ուրկէ անցած է յետոյ Արամեան աղջկանց վարժարանը։ Ընդհ. պատերազմէն քիչ առաջ այլեւս հանգստեան կոչուած կ'երթայ Մերսին իր զաւկին քով, ուրկէ կուգայ Եգիպտոս իր միւս զաւկին քով, և այլեւս չի կրնար դառնալ իր հայրենիքը և խոր ծերութեան մէջ կը մեռնի Եգիպտոս 1917ին։



ԽԸՏԸՐԵԱՆ ՍՏԵՓԱՆ.— Թավլուսունցի համեստ ուսուցիչ մը։ Երկար տարիներ (1897–1909) ձեռնահասօրէն վարած է հսկողի պաշտօնը Ս. Կարապետի մէջ։ Վերապրող։ Զինադադարէն յետոյ ալ պաշտօնավարեց հոն՝ Ս. Կարապետի որբանոցին մէջ։

ԽՈՐԹՈՒՄՃԵԱՆ ՄԻՀՐԱՆ.— Կ. Պոլսեցի, ծանօթ ուսուցիչ, վկայեալ Կ. Պոլսոյ Ղալաթիա Սէրայէն։ Յաջորդեց 1901ին ժան տ'Անժէի իբր Ֆրանսերէնի ուսուցիչ Ս. Կարապետի Բարձր. վարժարանին։ Դասախօսած է նաև գիտութիւններ։ Պաշտօնավարած է մինչև 1905։

ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ ՎՐԴ.— Բնիկ Էվէրէկցի, և աշակերտ Ս. Կարապետի ճեմարանին։ Հմուտ հայ և թուրք լեզուներուն և բաւական արաբերէնի։ Նաև հմուտ էր Հայ երաժշտութեան և Հայ և Թուրք ձայներու և եղանակներու և հասուցած է բազմաթիւ երաժշտագէտ աշակերտներ։ Գեղեցիկ ձայն ունէր և «նէյ» կը զարնէր։

ԿԱՐԱՊԵՏ ՔՀ. ՄԵԾ. — Զօմախլուցի, որդի Տ. Սարգիս քհ.ի։ Իր ծննդավայրին Վարի Թաղի Ս. Յակոբ եկեղեցւոյն առաջին քահանան որ իր ուսումըստացած էր Ս. Կարապետի վանքին մէջ։ Քահանայութեան հետ վարած է նաև գիւղին կրթական գործը։ Վերի Թաղի դպրոցը աւարտողները անոր մօտ կ'երթային սորվելու և զարգանալու համար։ Այս քահանան հին և նոր հայերէնով բանահիւսութիւններ ունէր՝ հովուերգական և պատմական։



ԿԵՍԱՐԵԱՆ ԹՈՎՄԱՍ ՊԱՏՈՒԵԼԻ.— Հին պատուելիներու սերունդին պատկանող կրթական մշակ մը որ վիճակին զանազան վայրերը բրած է ուսուցչութիւն, ժամանակին ուսումները՝ Քերական, Դործոց և Նարեկ կարդալ ուսուցանելով սերունդներու։ 1864ին Թալասի վարվարանին մէջ կը պաշտօնավարէր (Մասիս, թ. 648)։

ԿԻՄԻՃԵԱՆ ՍԱՂԱԹԻԷԼ (յետոյ Տ. ՂԵՒՈՆԴ ՔՀ.) . — Ծնած է 1859 Նոյեմ. 13ին Կեսարիա։ Ուսած է իր ծննդավայրին Յակոբեան վարժարանը, յետոյ աշակերտած է Կէրմիրի մէջ Ստեփան պատուելի Եըլանճեանի և Գառնիկ Մելիքեանի։ Աշխոյժ մտքով այս երիտասարդը 17 տարի ուսուցչական պաշտօն վարած է Կեսարիոյ Ազգ. վարժարաններուն մէջ։ Իր մասնագիտութիւնն էր պատմութիւն։ Աշակերտները կը խանդավառէր, նախ ինք խանդավառուելէ վերջ։ 1892ին Էնկիւրիւի դատավարութեան մէջ դատապատանի ենթարկուածներէն մին էր, որ 50 օր բանտարկուած մնալէ յետոյ ազատ արձակուեցաւ։ 30 Հոկտ. 1897ին քահանայ ձեռնադրուեցաւ Ստեփանոս եպ. Սանտալճեանէ Կեսարիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն վրայ։ Անգամ Գաւառ. և Կրօնական ժողովներու և պահ մը Առաջն. Փոխանորդ։



Անբասիր վարքով, անձնուէր, ճշմարիտ նուիրուած մը իր ազգին և եկեղեցիին։ Բռունցքն ունէր իրեն իբր զէնք։ Իբր աւագերէց Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ յաճախ յանդիմանած է ժամկոչ Զէյթունցի Յովակիմ Եզէկիէլեանը, որ պաշտպանեալն էր Հնչակեան Թաղականութեան։ Այս ստորին մատնիչը վրէժ լուծելու համար իրմէ կը յայտնէ ոստիկանութեան թէ Կիւմշեան վարժարանի թանգարանին փտասկար գիրքերը եկեղեցւոյ բակը, սալայատակին տակը, ընդարձակ փոսի մը մէջ իր ձեռքով թաղել տուած է քահանան։ Հոն է նաև իր մէկ հրացէնը։ Ասկէ զատ, եկեղեցւոյ հարաւի փոքրիկ դրան քովի սենեակին մէջ խոշոր ռումբ մը կայ։ Գիրքերը կը հանեն յայտնուած վայրէն և վեց օխանոց գունտը, հին, Իպրահիմ փաշայի օրերէն մնացած երկաթեայ գունտ մըն էր, որ կը ծառայէր՝ աղքատաց բաշխուելիք ածուխը կշռելու։ Այս գունտին «ռումբի» հանգամանք տալով, գործը ծանր համեմատութիւններ կ'առնայ, հէք երէցն ալ «պօմպաճիի» հոյակ...: Կը նետուի բանտ՝ ուր անգութ ծեծեր տեղացող ծեծուիէն իրեն կ'սպասէր, ջուր դին տորելու համար: Եւ պատերազմական ատեանը չ'ուշանար մահավճիռ արձակել 30 Յուլիս 1915ին: Կէս գիշերուան ոստիկան մը կը մտնէ զնտան եւ այս հանանան միայն զտնելով արթուն՝ մահապարտներու ցուցակ մը կը ներկայացնէ անոր, որպէսզի ցոյց տայ առտուան դէմ կախուելիք Հայերուն խոստակները: Տ. Ղեւոնդ ակնարկ մը կը ձգէ մահաբեր թուղթին վրայ եւ «ե՞ս ալ կամ եղեր մէջերնին» կը ձայնէ. յետոյ ծունր կը կրկնէ հոն՝ գերագոյն հուսկ աղօթքը մատուցանելու Արարչին: Իրեն պէս անմեղ ազգակիցներու հետ ընդ այգն կը բարձրանայ կախաղան: Ժամեր

վերջ, կուզան լակոտներ որոնք արեւին մէջ ճօճող այդ դիակին հետ կ'զբօսնուն, մէկ քանին' բուռ բուռ յարդ նետելով դէմքին, ուրիշներ' սքեմին քղանցքը քաշքշելով: Միեւնոյն մահապատիժով վկայակից եղողները 14 հոգի էին (1), իրենց կառափնատներով' կիսաբոլորակ աղեղ մը ձեւացուցած, որուն մէկ ծայրն էր — ականատես պատանիի մը պատմածին համեմատ — Տօքթ. Թորոս Նազլեան, իսկ միւսը' Տ. Ղեւոնդ, չուանէ պարոյրին ուժգին պրկումով' գլուխը հակած կուրծքին ուր փակցուած կար «պօմպաճի»ի դասապարտութեան պիտակը, զայն դառնութեամբ կարդալու արձանացումով մը' որ կարծես մահը կը հեգնէր, իր դահիճներն ալ միասին...: Տ. Ղեւոնդի մարմինը' նախ քան թաղումը' քարշածուի կը շրջի հողերուն վրայ, ոտքէն չուան կապուած» (*Թէոդիկ*, Գողգոթա թրքահայ հոգեւորականութեան եւ իր հօտին, Աղէտալի 1915 տարիին, *ձեռագիր*)։

*ԿԷՕՋԼԻՒՔԼԻՒ ԱՌԱՔԷԼԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Էֆքէրէցի, հաւանօրէն ուսումը ստացած է անցեալ դարուն առաջին քառորդին Ս. Կարապետ վանքին մէջ, և ապա ինքնօգնութեամբ զարգացած։ Փոքր Ասիոյ ամէնէն երեւելի վարժապետներէն մէկն էր։ Տոքթ. Ռուսինեանի հետ մասնաւոր դասեր առած է անոր հօրմէն Պավղանդէն։ Իր ասպարէզի սկիզբը Կիլիկիոյ շրջանակին մէջ անցուցած է, ծառայելով կաթողիկոսարանին մէջ իբր գրագիր։* 1835*ին Մարաշի մէջ Ս. Գէորգ եկեղեցիին մօտ, հանգ. Թօփալեան Գէորգ աղան նոր տուն մը կը շինէ և Կեսարիայէն այս պատուելին ուսուցիչ բերել տալով իր նոր տան մէջ դպրոց մը կը բանայ և բաւական թուով պատանիներ հաւաքելով անոնց կրթութեան և դաստիարակութեան հոգ կը տանի։ Կէօզլիւքլիւ Կարապետ վարժապետ այդ դպրոցին մէջ կ'ուսուցանէր քերականութիւն, տրամաբանութիւն, ճարտասանութիւն և թուաբանութեան չորս գործողութիւնները։ Դժբախտաբար Գէորգ Թօփալեան կ'սպանուի և դպրոցը կը գոցուի։ Կարապետ վարժապետ կը դառնայ իր ծննդավայրը* (Մարաշ, *էջ* 430 *և* 434)։ 1850*ական թուականներէն սկսեալ կը գործէ Կեսարիոյ* (1858–59 *տնօրէն Հայկեան վրժ.ի*) *և շրջանին մէջ։* 1850–1875 *քսանհինգամեակին անիկա կը նկատուէր այս վայրերուն Խիկարը և ինչպէս յիշելու առիթ ունեցայ քանիցս, ունէր հանճարեղ! ստուգաբանութիւններ Հիւնքարպէնտեան ոճով* (*տես վերը* 772, 778 *և* 802)։ (*Իր մասին տես նաև էջ* 778)։

*ՀԱՆԻՍ ՕՂԼԵՆՑ ՂԱՐԱ ՏԷՏԷ.— Դարձեալ ԺԹ. դարու առաջին կէսին ապրող պատուելիներէն մին, որ Զինլենց խանի մէջ դասարան մը բացած էր և կը դասախօսէր չուկայի տղոց։*

*ՀԻՆՏԼԵԱՆ ՂԱԶԱՐՈՍ.— Ծնած է* 1894 *Ապրիլ* 5*ին Թալասի մէջ։ Նախակրթութիւնը իր ծննդավայրին մէջ ստանալէ յետոյ կը մտնէ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը որուն շրջանը կ'աւարտէ Ա. կարգի վկայականով* 1912*ին, և կը ձեռնարկէ ուսուցչութեան։ Երկու տարի* (1912–1914) *տնօրէն–ուսուցիչ կ'ըլլայ Ագիգիյէի Ազգ. վարժարանին մէջ, և* 1914*ին կ'ստանձնէ Պօղազլեանի Ազգ. վարժարանին տեսչութիւնը, որ կը շարունակէ մինչև* 1915*ի սև Զատիկը, երբ կը ձերբակալուի և Սեբաստիոյ ճամբուն վրայ, անծանօթ վայր մը անգթօրէն սրախողխող կը նահատակուի։*

---

(1) *Որոնցմէ մէկը իր և այլոց մատնիչ ղազիր Ժամկոչ Յովակիմը։*



*ՀԻՆՏԼԵԱՆ ՍԱՐԳԻՍ.— Ծնած է Թալաս* 1883 *Փետր.* 9*ին։ Իր նախակըրթութիւնը ստացած է իր ծննդավայրին վարժարանը, յետոյ իբր որբ և սան Հալէլաբնակ Յակոբ Գույումճեանի կը մտնէ Ս. Կարապետի վարժարանը որուն շրջանը կ'աւարտէ* 1901*ին, և ծննդավայրը դառնալով* 1902–1905*ին Վերի թաղի դպրոցին ուսուցիչ կ'ըլլայ, որմէ յետոյ կը փոխադրուի Կեսարիա ուր կը պաշտօնավարէ Կիւմիւշեան և*



ՀԻՆՏԼԵԱՆ ՂԱԶԱՐՈՍ



ՀԻՆՏԼԵԱՆ ՍԱՐԳԻՍ

*այլ վարժարաններու մէջ։* 12 *տարի ուսուցչութիւն ընելէ յետոյ* 1913*ին կ'անցնի Ամերիկա և կը հաստատուի Նիւ–Եորք ուր կ'զբաղի դերձակութեամբ։ Այժմ փոխ–ատենապետը և եռանդուն անդամներէն մին է Կեսարիոյ վերաշինութեան միութեան Նիւ–Եորքի մասնաճիւղին։*

*ՀԻՆՏԼԵԱՆ ՍՏԵՓԱՆ (բժիշկ).— Ծնած է* 1882*ին Թալաս։ Իր նախակրթութիւնը ստացած է իր ծննդավայրին Վարդ–Պատրիկեան վարժարանին մէջ և բարձրագոյնը' Ս. Կարապետի վանքի վարժարանին մէջ որմէ վկայուած է* 1902*ին։ Ժամանակ մը իբր ուսուցիչ Գըրշէհիրի մէջ պաշտօնավարելէ յետոյ գացած է Պէյրութ և հետեւած Ֆրանսական բժշկական Համալսարանի ընթացքին, և բժշկական վկայական ստանալէ յետոյ հաստատուած է Ատանա։ Ընդհ. պատերազմին կը զինուորագրուի իբր բժիշկ հարիւրապետի աստիճանով։ Երբ Ատանա կը գրաւուի Դաշնակիցներէն իբր կամաւոր կը ծառայէ Դաշնակից բանակին և Հայ գաղթականներու և արկածեալներու մեծ ծառայութիւններ կը մատուցանէ։ Կը մեռնի* 1922*ին 'ի Պէլէն Իսկէլէսի։*

*ՃԻՎԷԼԷԿ ԱՂԶԱՐ ԽԱԼՖԱ, ԿԱՄ ՏԻՐԱՑՈՒ ԱՂԶԱՐ (աղաւաղում Եղիազարի).— Էվէրէկցի, հայրը Տ. Ստեփան քհ. Եղիազարեանի և մեծ հայրը մեր ուղեգիրին և հայկաբան ուսուցիչին' Եղիազար և կախաղան բարձրացած ուսուցիչ' Յովհաննէս Եղիազարեաններու։ Աղզար Խալֆայ* 1850*ական թուականներէն սկսեալ* 35 *տարի ուսուցչութիւն ըրած է Էվէրէկի մանչերու և աղջիկներու դպրոցներուն մէջ։*

ՃԻՎԱՆԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ.— Էֆքէրէցի, ծնած է 1874ին։ 1891ին շրջանաւարտ Մարզուանի Ամերիկեան Անատոլիա Գոլէճի։ Մասնակից Փոքր Հայքի շարժման։ Բանտին մէջ չարաչար խոշտանգուած։ Գաղատիոյ դատավարութեան մէջ 1893ին մահուան դատապարտուեցաւ, սակայն յետոյ իր վճիռը ցկեանս բերդարգելութեան փոխուելով աքսորուեցաւ։ Բուռն պաշտպանողական մը խօսած է դատարանին մէջ (29 Մայիս 1893) (տես Բռնութեան դէմ, էջ 67–73)։

ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԱՐԱ.— 1911ին Ս. Կարապետի բարձր. վարժարանին մէջ դասախօսելու կը հրաւիրուի։ Զուարթ և կենդանի դասախօսութիւններովը կ'աւանդէր ձեռնահասօրէն բարոյական գիտութիւնները, մատենագրութիւնը և ֆրանսերէն լեզուն։ Միայն մէկ տարի պաշտօն կը վարէ։

ՄԻԼԻՔԵԱՆ (ՄԻԼԻՔԵՆՑ) ՍԱՐԳԻՍ (յետոյ Տ. Կարապետ Քհ.).— 25 տարի անընդհատ դասախօսած է Թուրքերէն լեզուն Էվէրէկի վարժարանին մէջ (տես իր կենսագրութիւնը վերը, էջ 829)։

ՄԵՂՐԵԱՆ ԳՐԻԳՈՐ ՎԱՐԺԱՊԵՏ.— Կ. Պոլսեցի, դասախօսած է Ս. Կարապետի ճեմարանին մէջ 1820–1830ի միջոցները։

ՄԻՐՏԻՆԵԱՆ ԱՒԵՏԻՍ.— Ծնած է 1880ին Կեսարիա և իր նախակրթութիւնը ստացած՝ տեղւոյն Կիւմշեան վարժարանին մէջ։ Յետոյ



ՄԻՐՏԻՆԵԱՆ ԱՒԵՏԻՍ



ՄԻՐՏԻՆԵԱՆ ԳՐԻԳՈՐ

ուսուցիչ նոյն վարժարանին մէջ։ 1901ին կ'երթայ Ամերիկա, և այլ և այլ վայրերու մէջ Որբանոցեան գործի առհաւատչեայով կ'զբաղի։ Հիմնադիր և առաջին Ատենապետ Ամերիկայի Կեսարիոյ Այգեստանախնամին (1905ին) որուն բարգաւաճման աշխատած է մինչև իր մահը՝ 1933։ Ծամբորդած է Ամերիկայի գլխաւոր քաղաքները և ուր որ հանդիպած է Կեսարացիներու ջանացած՝ ղանոնք կապել այս կազմակերպութեան։ Կ'ենթադրուի թէ թարգմանութիւններ ունի ձեռագիր վիճակի մէջ։ Գրած է մի քանի յօդուածներ Հայ թերթերու մէջ։

ՄԻՐՏԻՆԵԱՆ ԳՐԻԳՈՐ.— Կեսարացի, 1903ին շրջանաւարտ կ'ըլլայ



Միացեալ Ուսումնարանէն, գեղագրութեան և գծագրութեան ուսուցչութեան կը կոչուի նոյն վարժարանին մէջ, ուր երկար տարիներ կը պաշտօնավարէ ձեռնհասութեամբ։ Իր գեղարուեստական զարդագիրերը և գծած նկարները մեծապէս գնահատուած են։ Պահ մը Եգիպտոս եկած է և ապա հայրենաբաղձութեամբ դարձած է իր ծննդավայրը։ Հոն մտադարձելով փոխադրուած է Կ. Պոլիս և հոն Ազգ. Հիւանդանոցի մէջ մեռած։

ՄԻՆԻՃԵԱՆ ՄԵԼՔԻՍԵԴԷԿ.— Կեսարացի, Կիւմշեան վարժարանի հնագոյն աւարտականներէն, որ երեք տարի 1890ական թուականներուն սկիզբը իբր գծագրութեան և գեղագրութեան ուսուցիչ պաշտօն վարած է նոյն հաստատութեան մէջ, յետոյ անցած է Եգիպտոս, ուր իբր գծագրիչ բաւական համբաւ շահած է։ Թանթայի մէջ լուսանկարիչ եղած է երկար ատեն։ Մեռած է 4–5 տարի առաջ։



ՄԸՋՄԸՋԵԱՆ (կամ այլ մականունով ՋԻԼԻՆԿԻՐԵԱՆ) ՅԱՐՈՒԹԻՒՆ.— Թալասցի, Գէորգ Էսաեան սան Ս. Կարապետի վարժ.ին մէջ։ Վկայեալ 1894ին և նոյն տարիէն իսկ ուսուցիչ։ 1903ին Գոնիա–Էրէյլի Ազգ. վարժարանին մէջ պաշտօն կը վարէր։

ՄԸԽՃԵԱՆ ԿԱՄ ՔԷՀԵԱԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Էվէրէկցի. աշակերտ Երուանդ Երկաթի և ապա Իզմիրի Մեսրոպեան վարժարանի։ Յարատև վաստակաւոր։ Պատանութեան քանի մը տարի Էվէրէկ պաշտօնավարելէ յետոյ դարձեալ Իզմիրի կողմերը գացած և Գուզ–Ատա ուսուցիչ եղած է։ Իր եղբայրը, Պօղոս, անհաբեկիչն Գարաթաշի Տ. Աբրահամ քհ.ի որդւոյն, Իզմիրէն Եգիպտոս փախած ըլլալով, Կարապետ կը ձերբակալուի և կ'աքսորուի Կեսարիա ուր Հայ–Կաթոլիկ վարժարանին մէջ ուսուցչական պաշտօն կ'առնէ։ Քանի մը տարի յետոյ կ'երթայ Նէվշէհիր, և անկէ Նիյտէ և անկէց դարձեալ Իզմիր, Պայընտըր և վերջապէս Էօտէմիշ պաշտօններ վարելէ ետք զոհ կ'երթայ Իզմիրի եղեռնին (1922)։

ՄԻԱՍԷՐԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (բժիշկ).— Ծընած է Էֆքէրէ 1876ին, որդի Գրիգոր Միասէրեանի որ առանց վկայականի բժշկութիւն կ'ընէր Էֆքէրէի մէջ ինչպէս նաև Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանին մէջ։ Կարապետ՝ թոշակաւոր սան Ս. Կարապետի Ա. կարգի վկայականով դպրոցը աւարտեց 1900ին և նոյն տարին գնաց Պէյրութ և Ֆրանս. բժշկ. վարժարանին մէջ բժշկութեան հետեւեցաւ։ 1904 Նոյ.ին աւարտեց իր ընթացքը և դարձաւ իր ծննդավայրը ուր կը զբաղէր բժշկութեամբ։ 1905 Յունուար 1ին նաև ուսուցիչ եղաւ Ս.



Կարապետի վարժարանին, դասախօսելով հոն առողջապահութիւն և գիտութիւններ։ Հաստատութեան ներքին բժիշկն նաև ինքն էր (Բիւզանդիոն, 2568)։ Ընդհ. պատերազմին զինուորագրուեցաւ և Կովկասի ճակատին վրայ նահատակուեցաւ։

ՄԻՆԱՍԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Ֆէնէսէցի, աշակերտած է Ադամեան Մերկերիոսի Ֆէնէսէի մէջ 1880ին և անոր կը յաջորդէ իբր ուսուցիչ Թուրքերէնի իր ծննդավայրին մէջ։ Շրջանին զանազան վայրերուն մէջ ուսուցչութիւն ընելէ յետոյ 1893-94 դպրոցական տարւոյն Թալասի Վարի Թաղի Արշակունեան վարժարանի տնօրէնութիւնը կը վարէր, երբ կատղած շունէ մը խածնուելով մեռաւ (Փունջ, Թ. 2393)։

ՄԻՆԱՍԵԱՆ ՄԻՆԱՍ.— Ծնած է Կէմէրէկ 1870ին։ Նախակրթութիւնը ծննդավայրին և բարձրագոյն կրթութիւնը Մարզուանի Գոլէճին մէջ ստացած էր։ Յետոյ ուսուցչական պաշտօններ վարած է Կէմէրէկի և Կեսարիոյ մէջ։ Ազդուած Մարզուանի Գոլէճի մթնոլորտէն, յեղափոխական գործին կը մասնակցի և կը գործակցի Մուշեղի ապստամբական խումբին։ Մուշեղին կախուելէն յետոյ կը մեկնի Ամերիկա, ուրկէ կը դառնայ Կեսարիա 1908ի Սահմանադրութենէն օգտուելով։ Նախ ջանաց կազմել Ռամկ. խմբակ մը Կեսարիոյ մէջ և երբ չյաջողեցաւ գնաց յարեցաւ Հնչակեանց։ Օր մը իրեն դիտել կու տայ մէկը իր այս անսկզբունք ընթացքը։ Իբր բացատրութիւն կ'ըսէ. «Ռամկավարներու և Հնչակեանց մէջ մասնաւոր հասկացողութիւն մը կայ, ուր որ Ռամկավար ընկերներ չգտնուին, և դուն չյաջողիս հոն կազմել խմբակ մը, կը յարիս Հնչակեաններուն»։ Մինասեան, աննկարագիր, կը դառնայ Հնչակեաններու վարձկան շէֆը, լոկ շահու համար և կը ծառայէ անոնց պոռոտ բեմբասախօսութիւններով և անամէջ ատենաբանութիւններով, շահագործելով միամտութիւնները։ Շնորհիւ իր կուսակցականի հանգամանքին ձեռք կը բերէ պահ մը (1909-1910) Հայկեան վարժարանին, և յետոյ՝ երբ Կիւմշեանի Թաղականութիւնը Հընչակեաններու ձեռքը կ'անցնի՝ Կիւմշեան վարժարանի (1913) տնօրէնութիւնները։ Նկարագրով խաչագող և արծաթապաշտ այս անձը տխուր դեր մը կատարեց 1915ի սև օրերուն իբր մատնիչ շատերու մահուան պատճառ դառնալով, առանց փրկել կարենալու իր կեանքը, վասնզի ինքն ալ կախուեցաւ իր իսկ զոհերուն հետ 2 Յունիս 1915ին։ Իր հուսկ բանքը եղաւ կախաղանին ստորոտը «խիղճս հանգիստ է, արժանի եմ այս չուանին»:

ՄԻՆԱՍԵԱՆ ՍԱՐԳԻՍ.— Ծնած է Զէնկէլէր 1873ին։ Նախակրթութիւնը ստացած է գիւղին վարժարանին և յետոյ Պարտիզակի բարձ. վարժարանին մէջ։ 1887ին կը մտնէ Կեդրոնական վարժարան ուրկէ վկայուած է իբր պսակաւոր դպրութեանց 1893ին։ 1894ին կ'երթայ Ժընէվ և կը հետեւի քաղաքական և ընկերային գիտութեանց։ Մասնակցած է Դրօշակի խմբագրութեան մինչև 1901, ուրկէ յետոյ





անցած է Ամերիկա, և ստանձնած Հայրենիքի խմբագրութիւնը, մինչև 1904։ 1906ին կրկին կ'անդամակցի Դրօշակի խմբագրութեան ի Ժընէվ, ուրկէ 1909ին կու գայ Պոլիս և կ'զբաղի ուսուցչութեամբ և խմբագրութեամբ և ինքզինքն կը նուիրէ մասնաւորապէս Ֆրանսերէն–Հայերէն բառարանի մը պատրաստութեան։ 1913-14 դպրոցական տարւոյն մէջ երբ Ս. Կարապետի բարձր. վարժարանին տնօրէնութիւնը թողուց Վահան Թէքէեան, Սարգիս Մինասեան ստանձնեց այդ պաշտօնը և Կ. Պոլիսէն գալով, տարեշրջանը աւարտեց և դարձաւ Կ. Պոլիս։ 24 Ապրիլ 1915ին ձերբակալուած մտաւորականներէն մին որ նահատակուած է։

ՄԿՐՏԻՉԵԱՆ ԳԷՈՐԳ.— Ծնած է 1871 Ապրիլ 21ին Սեբաստիա։ Նախակրթութիւնը կ'ստանայ անդ։ 1887ին կը մտնէ Կ. Պոլսոյ Կեդրոնական վարժարանը, ուր կ'ունենայ փայլուն ուսանողութիւն մը միշտ առաջին հանդիսանալով քննութեանց մէջ։ 1893ին շրջանաւարտ կ'ըլլայ իբր պսակաւոր դպրութեանց և գիտութեանց, և նոյն տարին իսկ իբր գիտութեանց ուսուցիչ կ'երթայ Կեսարիա և Ս. Կարապետի բարձ. վարժարանը, ուր մինչև 1896 Յուլիս, երեք տարի պաշտօն կը վարէ արդիւնաւոր կերպով։ Յետոյ իր խնայած գումարով կ'երթայ Բարիզ և 1897 Հոկտեմբերին կը մասնակցի Ecole supérieure des Minesի քննութեանց և կը յաջողի։ 1901ին վկայուած է Ingénieur des Minesի վկայականով։ Յետոյ պաշտօնի կը կոչուի Պաքու Մանթաշէֆի նաւթահանքերու մէջ իբր երկրաչափ։ 1913ին տակաւին նոյն պաշտօնին մէջ էր (1)։

ՄՆԱԿԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ.— Ծնած է 1837ին Խասքէօյ Կ. Պոլիս, ուր կ'ստանայ նաև իր ուսումը, և ապա օգնական դասատու կ'ըլլայ նոյն վարժարանին մէջ, ապա Կէտիկ Փաշա և Էյուպ թաղերը, Ս. Փրկիչեան Հիւանդանոցի վարժարանին մէջ իբր մաթեմատիկի դասախօս։ Խասքէօյ, Ներսէսեան վարժարանի սրահն ալ երբեմն թատեր. ներկայացումներ կու տային, դերուսոյց ունենալով Գ. Չափրաստը։ Իր մէջ դերասանութեան յարմարութիւն տեսնելով զինքը կը հրաւիրեն Նաւումի թատրոնը։ Վերջապէս կ'ըլլայ դերասան՝ Արեւելեան թատրոնին մէջ։ 1867ին վերադարձ մը կ'ընէ դէպի ուսուցչութիւն, այս անգամ Թէսթիճեան մականունով, Կէտիկ Փաշայի կողմերը։ 1869ին Արամեան ընկերութիւնը կ'ուզէր դասատու մը, և վարժուհի մը ղրկել Կեսարիա։ Զինքը կը ներկայացնեն Սենեքերիմ Մանուկեանի։ Երկուստեք կը համաձայնին։ Մնակեան Սկիւտարի մէջ կը գտնէ



(1) Հետևաբար 27 տարեկանին մեռած ըլլալու պարագան որ Հ. Ուղուրլեան և Կ. Աբրահամեան գրած են ճիշդ չէ։

Օր. Իմաստուհի (յետոյ Տիկ. Մնակեան) անուն վարժուհի մը և անոր հետ Սամսոնի ճամբով դէպի Կեսարիա կ'ուղեւորի, ուր կը մնայ 4 տարի շարունակ վարժապետութեան պաշտօնով։ Իր Կեսարիոյ պաշտօնավարութիւնը յիշատակելի մնացած է հին սերունդի մէջ, վանքի առաջին վարժապետն էր արդիական որ նորութիւններ կը տանէր իր հետը Կեսարիա, Կ. Պոլիսէն։ Ան իսկական հիմնադիրն է աղջիկներու վարժարանին։ Ինքն հաստատած է պատիժի և վարձատրութեան ձեւեր որոնք բոլորովին տարբեր էին հնօրեայ պատուհասներու ընտրածէն։ Իր հաստատած ոսկեջրած մետաղէ մրցանակ զարդակոճակներէն, որոնք կը տրուէին աշակերտներուն — օրինակ մը իբր թանկագին աւանդ մը պահուած իր աշակերտուհիներէն Օր. Մառի Գուլթնուեանէ (յետոյ Տիկին Սահակեան †) մայր՝ բանաստեղծ Սարգիս Սահակեանի — հոս կը ներկայացնենք իբր նշխար մը, Կեսարիոյ կրթական կեանքին։ Մնակեան իսկապէս յեղաշրջող դեր մը կը կատարէր Կեսարիոյ կրթական կեանքին մէջ, սակայն իր մէջ կը խօսէր արուեստագէտը որ ինքզինքն կը ծածկէր թէև, սակայն օր մը պիտի տկարանար։ Իր ինքնակենսագրութեան մէջ կ'ըսէ թէ «Կեսարիա կը կարդայի լրագիրներու մէջ թատրոնի ազդեր, Վարդովեանի տնօրէնութեան ներքեւ տրուած ներկայացումներ, հոգիս տեղէն կը թնդար», ուստի այլեւս ձանձրացած ուսուցչութենէ, Մանուկեանի արտօնութեամբ Կ. Պոլիս կը դառնայ ընտանեօք 1873ի ձմեռնամուտին, «3 զաւակ տղով», ինչպէս ինքն կ'ըսէ։ Կինը՝ զգալով թէ ինչո՞ւ կը դառնային, —ինչպէս կ'ըսէ ինքը— «կը հարցնէր թէ արդեօք Պոլիս դերասա՞ն պիտի ըլլայի թէ՝ դասատու»: Մնակեան կը վստահեցնէր թէ դասատու պիտի մնար, բայց Կ. Պոլիս ոտք կոխած օրն իսկ՝ կամուրջին վրայ կը հանդիպի Գալէմճեանի որ Օրթագիւղ խումբ մը կազմած իրեն կ'սպասէր։ Հետեւեալ օրն արդէն Մնակեան տուած էր որոշումը և դերասան եղած էր։ Այլեւս Մնակեան նուիրուեցաւ Հայ և Թուրք բեմին, որոնց ծառայեց իբր դերասանապետ ալ երկար տարիներ, մեծ զոհողութիւններով և արուեստի հուրով վառ ոգիով մը։ Մեռած է 22 Փետրուար 1920ին, անմոռաց անուն մը թողլով, Թատրոնի պատմութեան մէջ։



ՄՆՏԻԿԵԱՆ ԱՐԱՄ.— Կեսարացի, վկայեալ փաստաբան որ Միացեալ Ուսումնարանի մէջ կը դասախօսէր իրաւագիտութիւն և քաղաքացիական կրթութիւն։ 1915ին տարագրուեցաւ Տէրա'ա։ Վերապրող։ Յետոյ Կ. Պոլիս հաստատուեցաւ։

ՄՕՐՃԻԿԵԱՆ ԳԱԼՈՒՍՏ.— Պրուսացի, անգլերէնի, մարզանքի և երգեցողութեան ուսուցիչ եղած է Ս. Կարապետի Բարձր. վարժարանին մէջ։ 1913-1915 դասախօս Միացեալ Ուսումնարանին մէջ մարմնամարզի, վերապրող։

ՄՈԼԼԱ ԳՐԻԳՈՐ.— Էվէրէկցի, սպասաւոր Միւֆթի հաճի Իպրահիմ էֆ.ի, ուրկէ սորված էր թուրքերէնը։ Մեծ աշխատութեամբ կը սորվի նաև ռախամ (թուաբանութիւն)։ Թուրքերը հաշիւ չգիտնալով



շատ կը սիրէին զինքը և զինքն Մոլլա կը կոչէին։ 1850-1860 թուականներուն գրեթէ իր շրջանին միակ թուրքերէն գիտցող անձն էր։ Իրմէ շատեր սորված էին թուրքերէն (տես վերը, էջ 1166)։ 1858ին Էվէրէկի վարժարանին մէջ ալ դասախօսած է (նոյն)։

ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՅԿԱԶՈՒՆ.— Ծնած է Ֆէնէսէ 1880ին, և նախակրթութիւնը ստացած տեղւոյն Ազգ. վարժարանին մէջ ուր կը նկատուէր անբարեյոյս աշակերտ մը իր անսովոր անառակութեան համար։ Այս պատճառով յաճախ ճաշակած է իր ուսուցիչներուն գաւազանի հարուածները, որոնք փոխարինած է պարստիկով։ Յետոյ հետեւած Տարսոնի Ամերիկեան Գոլէճի ընթացքին և իրեն մասնաւոր աշխատութեան առարկայ ըրած է ընկերաբանական գիտութիւնները՝ ընկերաբանութիւնը, մանկավարժութիւնը և բարոյագիտութիւնը։ Տարսոնի Գոլէճին մէջ չորս տարի (1901-1905) պաշտօնավարելէ յետոյ 1905-1906 և 1908-1912 Էվէրէկի և եօթը տարի ալ ուրիշ ազգ. վարժարաններու և ինն տարի ալ Պարտիզակի Ամերիկեան Բարձրագոյն վարժարանին մէջ պաշտօնավարած է իբր ուսուցիչ կամ տնօրէն։ Ընդհ. պատերազմին ձերբակալուած է Կեսարիա և բանտէն արձակուելէն յետոյ իբր զինուոր թրքական բանակի՝ ղրկուած է մինչև Կարին։ Թէ բանտէն և թէ՛ զինուորական ծառայութենէն գրեթէ հրաշքով ազատած է։ Բրոֆ. Հայկազուն Յակոբեան ի ծնէ երգիծաբան, հաճելի պատմող մըն է որ գիտէ անվրդով պատմել ամենէն ծիծաղաշարժ դէպքերը։ Կեսարիոյ մէջ բանտարկութեան շրջանին մինչ իրենց կեանքը ամէն վայրկեան վտանգի մէջ էր ան մահուան սարսուռը կատակի վերածած է և ո՛չ միայն դժբախտ վիճակակիցները միշտ զուարթ պահած այլ Թուրք պաշտօնեաներու համակրանքը վայելած և իրեն վիճակը տանելի ընել յաջողած է։ Ունի արտասովոր կարողութիւնը նմանցնելու ձայնը, շարժուածքները և ձեւերը, նոյնիսկ 40 տարի առաջ ապրող մարդոց, ասոր համար կ'ըսէին զինքը ճանչցողները թէ անոր յիշողութիւնը լուսանկարչական գործիքի մը կը նմանի։ Հիմա կը վարէ Լառնաքայի Ազգ. վարժարանի տնօրէնութիւնը։ Կ'աշխատակցի Արեւին, իր նախասիրած նիւթերուն վրայ յօդուածներով։ Ունի նաև անտիպ ինքնագիր և թարգմանածոյ գործեր։



ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ԳԱՐԵԳԻՆ.— Ծնած է Ալեքսանդրապոլ (Լենինական) 1884ին։ Իր ուսումը ստացած է Էջմիածնայ Գէորգեան ճեմարանին մէջ, ուրկէ շրջանաւարտ եղած է 1903ին, և Կովկասեան քաղաքներու մէջ ուսուցչութիւն ըրած։ Յետոյ գացած է Բարիզ, և հետեւած Սօռպօնի դասախօսութիւններուն (1907-1911)։ Յետոյ կուգայ Կ. Պոլիս և կ'երթայ (1911 Սեպտ.) Կեսարիա իբր տնօրէն Ս. Կարապետի Բարձր. վարժարանի, երբ դպրոցը՝ արտաքին ազդեցու-

թեան տակ տագնապներու մատնուած էր։ Մէկ տարի կը պաշտօնավարէ։ Իբր ռուսական հպատակ պատերազմի ատեն Էնկիւրիւ կ'աքսորուի։ Զինադադարէն յետոյ կը պաշտօնավարէ Խասգիւղի և Եէտի-Գուլէի խնամատարական որբանոցներուն մէջ։ 1922ին կ'անցնի որբերուն հետ Յունաստան։ Մարսիլիա և Աղեքսանդրիա պաշտօնավարելէ յետոյ հիմա կը դասախօսէ Գահիրէի Ազգ. վարժ.ին մէջ։

ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ԱՏԵՓԱՆ (տես Երլանճեան)։

ՅՈՎՆԱՆԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ. — Ծնած է 15 Ապրիլ 1880ին Ֆէնէսէ, Հաճընէն գաղթող ծնողէ մը։ Նախակրթութիւնը կ'ստանայ ծննդավայրին մէջ և յետոյ կ'աշակերտի Տարսոնի Ս. Պօղոսեան Գոլէճին։ Իր առաջին և միակ հայերէնի դասերը առած է Ռուբէն Պալեանէ։ Մտած է ուսուցչական ասպարէզ, պաշտօնավարելով նախ Ֆէնէսէի (1897), յետոյ Կեսարիոյ և Նէվշէհիրի վարժարաններուն մէջ։ Մօտ 12 տարի ուսուցչութիւն ընելէ յետոյ գացած է Կ. Պոլիս, ուր մնացած է մինչև Զինադադար և գրագրական պաշտօն վարած։ 1920ին անցած է Ամերիկա, ուր կ'զբաղի հիմա կնոջական զգեստներու գծագրութեամբ և ձևագիտութեամբ։ «Իր համեստուկ երեւոյթին մէջ կը ճնանայ արւեստագէտը: Յովնանեան, ըստ Եղիազարեանի, Կեսարիոյ նոր դպրոցներուն ամէնէն փայլուն դէմքերէն մէկն է գէթ Հայ գրականութեան մէջ, անհամար կտորներ ցանցնած է պոլսահայ թերթերու մէջ: Ոտանաւորներ եւ սիրուն պատմուածքներ ունի պարբերաթերթերու մէջ եւ հաճելի զաւեշտներ Կավռօշի եւ Զուռնայի մէջ»: Գծագրիչ ու գեղագիր։ Անդամ է Ռամկ. Ազատ. կուսակցութեան և Կեսարիոյ վերաշինական միութեան։ Փճացուած են 1896ի դէպքերուն իր երկու անտիպ գործերը՝ Ֆլօրա 300 էջնոց արձակ տաղաչափութեամբ դիցաբանական հովերգութիւն մը, և Հայ Հոմանիշ Բառարան (15 տարուան աշխատանք), իսկ Իզմիրեանց գրական մրցանակաբաշխութեան ներկայացուած է Էվէրէկ-Ֆէնէսէի Հայոց գաւառաբարբառ գործը, որ Ա. մրցանակի արժանի դատուած է, սակայն Ընդհ. պատերազմին պատճառով չէ վարձատրուած։ Ունի նաև կատակերգութիւն մը՝ Խոյումնի Մարգար Աղայի արկածները, որ ներկայացուած է Ամերիկահայ բեմին վրայ։ Կ. Պոլսոյ և Ամերիկայի թերթերուն մէջ ունի յօդուածներ։





ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ԳԱՐԵԳԻՆ. — Կէմէրէկցի, իր մկրտութեան անունն էր Մարտիրոս, որ դպրոցին մէջ Տրդատ եպ. փոխած է Գարեգինի։ Գ. Խասեան սան։ Յաջողագոյն աշակերտ. Ա. կարգի վկայականով կ'աւարտէ իր դպրոցը (1893) և նոյն տարին իսկ կը մտնէ իբր ուսուցիչ Կեսարիոյ Հայկեան վարժարանը, որուն յետոյ տնօրէնութիւնն ալ պիտի վարէր (1907–1910)։ Ուսուցչական պաշտօն ունեցած է նաև Միացեալ Ուսումնարանին (1902–1904) և Արամեան աղջիկներու վարժարանին մէջ (1905–1907)։ 1911ին ստանձնեց ֆրանսերէնի դասերը Ս. Կարապետի վարժարանին մէջ։ Նաև դասախօս պատմութեան, հայերէնի և մաթեմաթիկի, և մնաց մինչև 1915 իր պաշտօնին վրայ։ Նահատակուած է տարագրութեան ճամբուն վրայ։ Փոքրադիր, համեստունակ մարդ մըն էր։ Զինքը կը կոչէին Տէրվիշան։ Անբաժան ընկեր և մտերիմ Վահան Քիւրքճեանի, որուն դպրոցական ընկերն էր։ Իր բնական երկչոտութիւնը արգելք եղած էր իրեն սակայն մտնելու անոր հետ Դաշնակցութեան թոհուբոհին մէջ։ Մնացած է միշտ չեզոք, և կապուած միայն իր ուսուցչական պաշտօնին որ 20է աւելի տարիներ վարած է.



ՆԵՐՍԷՍԵԱՆ ՏԻԳՐԱՆ (յետոյ Տ. Ներսէս քհ.). — (տես կենսագր. էջ 845), Նախ քան քահանայական ձեռնադրութիւնը իբր ուսուցիչ պաշտօնավարած է Թոմարզայի Վարի Թաղի վարժարանին մէջ։

ՆԷՎՇԷՀԻՐԼԵԱՆ ԴԱՌՆԻԿ. — Հայկեան վարժարանի գծագրութեան ուսուցիչը 1913–1915։ Տարագրուած։ Վերապրող։ Զինադադարէն յետոյ Եաֆա և Երուսաղէմ։

ՆԻԿՈՂՈՍԵԱՆ Տ. ՄԱՐՏԻՐՈՍ ՔՀ. — (Տես իր կենսագրութիւնը վերը, էջ 937–9)։

ՆՇԱՆԵԱՆ ԴԱՆԻԷԼ. — Կէրմիրցի, Ս. Կարապետի վարժարանին բազմահմուտ ուսուցիչը, որ 27 տարի (1888–1915) անընդհատ պաշտօնավարած է այդ հաստատութեան մէջ, միակ վկան հանդիսանալով վարժարանին բացումին և փակումին։ Կէրմիրի Պարթևեանի աշակերտ, իր ասպարէզի սկզբնաւորութիւնը ըրած է հոն, յետոյ հրաւիրուած է Ս. Կարապետի բարձր. վարժարանը։ Դանդաղաշարժ, անոգի, փիլիսոփայութեան մարդն էր։ Արտաքուստ պարզ և համեստ, համբաւաւոր էր իբր կենդանի պատմութիւն։ Հին ու նոր հայերէնի, պատմութեան, փիլիսոփայութեան և կրօնագիտութեան դասերը աւանդած է անձանձրոյթ աւանդական մեթոտով։ Իր աշակերտները կ'ըսեն թէ ունէր մեծածաւալ պատմական աշխատութիւն մը՝ պահուած վանքին գրադարանին մէջ։ Մելքոն Ասատուր կը հաւաստէ թէ ունէր բազմաթիւ հեղինակութիւններ՝ անտիպ։ Միայն տպուած է իր «Փիլիսոփայութեան Պատմութիւնը»։ 10 Յուլիս 1915ին կը տարագրուի և Ազիզիյէի մօտ՝ Թէքէ Տէրէսի կը նահատակուի։



ՆՇԱՆԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ. — Կէմիւրցի, հօրեղբայր Նախորդին։ Իր ուսումը առած է ծննդավայրին Պարթեւեան վարժարանին մէջ 1862-1868 թուականներուն, երբ այդ հաստատութեան գլուխը կը գտնուէր Ստեփան պատուելի Եըլանճեան։ Անգլիերէնը սորված է իր ծննդավայրին մէջ Յովհաննէս Տիւմանեանէ, ֆրանսերէնը և քանակագիտութիւնը Գառնիկ Մելիքեանէ և ապա ինքնաշխատութեամբ զարգացած։ Նախ օգնական-ուսուցիչ եղած է Պարթեւեանի մէջ, և 1873ին Ստեփան պատուելիի մահէն յետոյ ինքն եղած է տնօրէն նոյն վարժարանին և վարած այդ պաշտօնը մինչև 1876, ուրկէ յետոյ Կեսարիոյ Հայկեան վարժարանի տնօրէնութիւնը ստանձնած՝ մինչև 1886։ 1886-88 կը վարէ Առաջնորդարանի դիւանապետութիւնը, և երբ 1888ին Ս. Կարապետի բարձր. վրժ.ը կը բացուի, Տրդատ եպ. Պալեանի կարգադրութեամբ տնօրէն կը կարգուի այս հաստատութեան, ուր կը մնայ 19 տարի շարունակ տնօրէնութեան պաշտօնով, միայն երկու անգամ կարճ ընդմիջումներով, և միշտ իբր դասախօս, առեւտրական գիտելիքներու, տոմարակալութեան, իրաւաբանութեան, փոխադարձ թարգմանութեան, բարոյագիտութեան, Թուրքերէնի։ Պահ մը դասախօսած է նաև անգլիերէն։ Իր հանդարտ և լուրջ բնաւորութեամբ գրաւած էր Տրդատ եպ. Պալեանի կատարեալ համակրութիւնը։ Փոքր մարմնով ջղուտ, թեթեւաշարժ, տեսական գիտութեան մարդն էր։ Գրած էր Ս. Կարապետի վանքին պատմութիւնը, Տրդատ եպ. Պալեանի հայ-



ՆՇԱՆԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ



ՆՇԱՆԵԱՆ ՍՈՒՐԷՆ

թայթած ատաղձներով։ Ունէր նաև թարգմանածոյ ընտիր կտորներու հաւաքածոյ մը։ Աշխատակցած է նաև շահեկան յօդուածներով Կ. Պոլսոյ Հայ լրագիրներուն։ 1908ին վանքին սանդուխներէն արկածով վար ինկաւ և աջ սրունքին ծնկոսկրը կոտրեցաւ և մեռաւ անոր հետեւանքով։ Թաղուած է վանքին գերեզմանատունը։

ՆՇԱՆԵԱՆ ՍՈՒՐԷՆ (բժիշկ).— Ծնած է 1884ին Կէմիւր։ Որդին՝ Նախորդին։ Իր նախնական և միջնակարգ ուսումը առած է Ս. Կարապետ վանքին մէջ, ուրկէ շրջանաւարտ եղած է 1901ին։ 1901-1902ին մէկ տարի ուսուցիչ եղած է նոյն վարժարանին մէջ։ 1902ին կը մտնէ Պէյրութի Ֆրանս. բժշկ. վարժարանը, որուն շրջանը կ'աւարտէ 1909ին։ Երկու տարիի չափ Պոլսոյ Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի



մէջ օգնական-վիրաբուժի պաշտօն վարած է, և յետոյ Պոլիս հաստատուած։ Դաշնակցական։ Ընդհ. պատերազմին կը զինուորագրուի և էնկիւրիւէն ձերբակալուած ծանրապէս հիւանդ վիճակի մէջ կը բերուի Կեսարիա, և 1915 Սեպտ. 5ի շաբաթ առտուն ժամը 5ին՝ առանձին գրեթէ կիսամեռ վիճակի մէջ կախաղան կը հանուի։

ՆՈՐՀԱՏԵԱՆ ՄԱՆՈՒԿ. — Սեբաստացի, 1891-1892ին Յակոբեան և 1892-1893ին Հայկեան վարժարաններու տնօրէն։ Զանազան կրթական պաշտօններ վարած է։ 1913-1915ին Արամեան աղջիկներու վարժարանին աւագ-ուսուցիչն էր, և գաւառին Ուսումն. Խորհուրդին անդամ։ Տարագրուած է Հալէպ, և յետոյ անցած Ամերիկա։

ՇԱՀԻՆԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Կէմիւրցի, աշակերտ տեղւոյն Պարթեւեան վարժարանին և ապա հոն օգնական-դաստատու և երաժշտապետ։ Յետոյ ուսուցչական պաշտօնով Գոնիա գնաց, անկէ անցաւ Տարսոն և ապա Գաղատիա ուր փաստաբանութեան ձեռնարկեց և կրթական ասպարէզէ հեռացաւ։

ՇԽԼԸԵԱՆ (կամ ԸՇԸԳԼԵԱՆ) ՆԵՐՍԷՍ ՎՐԴ.— Այս զարգացած եկեղեցականը (տես կենսագրութիւն էջ 1005-6) որ Ս. Դանիէլ վանքին մէջ ուսում առած էր 1903էն յետոյ կարգաթող՝ Սըվզընի մէջ ուսուցչութիւն ըրաւ մինչև 1915 և տարագրութեան մէջ կորսուեցաւ։

ՈՍԿԱՆ ՍԻՐԱՆՈՅՇ (ՕՐ.).—Մանկապարտիզպանուհի Արամեան վարժարանի։ 1915ին կրօնափոխութեամբ զերծ կը մնայ տարագրութենէ և կը մնայ Կեսարիա, ուր կը մեռնի։

ՈՒՂՈՒՐԵԱՆ ԶԱՐՈՒՀԻ (Տիկ.).— Գլխաւոր ուսուցչուհի Արամեան վարժարանի։ Տարագրութեան ճամբուն վրայ մեռած ի Ղաթմա։

ՈՒՂՈՒՐԼԵԱՆ ՀՄԱՅԵԱԿ (ՄԵԼՔՈՆ ԱՍԱՏՈՒՐ).— Ծնած է 1873ին Էվէրէկ, Ուղըրլենց ընտանիքէն որ Էվէրէկի մէջ նշանաւոր էր։ Իրենց անունով, թաղ, աղբիւր և ձոր կար հոն։ Ինքն իր մեծ հօրը անունով կոչուած էր Մելքոն, որուն հայրն էր Կարապետ որ իր ժամանակին ամէնէն ազդեցիկ անձնաւորութիւններէն մին էր և իրեն պէս Էշրաֆին պատկանող Հաճի Պարսամ Օղլուի և Քէօլէ Օղլուի հետ պատճառ եղած էր կառավարութեան կեդրոնին Տէվէլուէն Էվէրէկ գալուն։ Իր հայրն էր Ասատուր Ուղուրլեան որ 60 տարեկան հասակին Էվէրէկի կոտորածին, 1896 Հոկտ. 14ին, ըսպանուած է շուկային մէջ։ Ջայն յօշյօշ պատառելով կախած են մսավաճառի կէռերէն և «աժան միս կը ծախենք» պոռալով անոր միսերը շուներուն տուած են։ Մելքոն որ իր հօրը չորրորդ զաւակն էր, իր ծննդավայրին մէջ նախնական կրթութիւն ստանալէ յետոյ, 1888ին կը մտնէ Ս. Կարապետի Ներքին բարձր. վարժարանը իբր Գ. Խասեան սան։ 1893ին Ա. կարգի վկայականով շրջանաւարտ կ'ըլլայ։ «Կեսարիոյ վարժարաններէն ելած գրողներուն մէջ առաջինն ինքն է որ աշխարհաբար գրած է: Դպրոցական գրա-



սեղաններուն վրայ իր արտադրած համեղ ոտանաւորները վանքին եւ Կեսարիոյ ուսանողներուն առաջին ներշնչողները եղած են» (*Եղիազարեան*)։

*Հազիւ ընթացաւարտ եղած, մտաւ ուսուցչական ասպարէզ և նախ երկու տարի* (1893-95) *օգնական-ուսուցիչի պաշտօն վարեց վանքին մէջ, և ապա ուսուցիչ եղաւ Կիւմիշեան վարժ.ի մէջ* (1895 *Օգոստ.* 13), *երբ արդէն քաղաքին մէջ զինքն կանխած էին իր ընկերները՝ Վահան Թիւրքճեան և Իսրայէլ Արսլանեան, իբր Հայկեան վարժարանի ուսուցիչ։ Հայկական ջարդերու շրջանն էր* (1895) *և սարսափը ամէն կողմ կը տիրէր և շուկանները գոց էին։ Երեք ընկեր, երեքն ալ պանդուխտ, կը գիշերէին Հայկեան վարժարանին վրայ փոքր սենեակ մը, Առաջնորդարանի դէմ։ Թիւրքճեան խորհուրդ կու տար ընկերներուն ինքնապաշտպանութեան համար մէկ մէկ զէնք գնել։* 1895 *Նոյ.* 12*ի շբ. օրը, ճիշդ շաբաթ մը առաջ Կեսարիոյ ջարդէն, Հ. Ուղուրլեան դպրոցին փակումէն յետոյ կը փութայ Հայկեան վարժ. ընկերներուն մօտ։ Հազիւ սենեակէն ներս մտած Թիւրքճեան, զէնք մը գնած, ուրախ՝ իրեն ցոյց տալ կ'ուզէ՝ բարձին տակէն հանելով, և կատակի համար դէմքին կ'ուղղէ հրազէնը և կը քաշէ բլթակը, կարծելով որ պարապ է։ Թէև Ուղուրլեան Թիւրքճեանի թեւին ուժգին հարուած մը կու տայ և հրազէնը գետին կ'իյնայ, սակայն առաջին գնդակը իր դէմքին և երկրորդը՝ պատին մխուած էր։ Թիւրքճեան կը նուաղի, Ի. Ասլան կը շփոթի, մինչ Տրդատ վրդ. կը պոռայ Առաջնորդարանէն։ Վերջապէս իրողութիւնը կը յայտնուի։ Հմայեակ Ուղուրլեան գրաւոր կը յայտնէ թէ ո՛չ ոք յանցաւոր է այս պատահարին համար և ինքն է որ իր զէնքով վիրաւորուած է, մատը բլթակին կռթնցուցած, փողէն ներս դիտած ատեն արկածով հրազէնը կրակ առած ըլլալով։ Ուղուրլեանի դէմքին կապարը Տոք. Տատ կը հանէ Թալասի հիւանդանոցին մէջ, սակայն վէրքը չի դարմանուիր, ուստի կը մեկնի* 1896 *Մայիսին Կ. Պոլիս և անկէ Ֆրանսա, ուր կը մնայ մօտ հինգ տարի և կ'զբաղի պիստակավաճառութեամբ։*

1903*ին, բժիշկներու խորհուրդով, ճարահատ Եւրոպայէն կը դառնայ Կեսարիա, նախ հանդիպելով Իզմիր ուր վիրաբուժական գործողութիւն մը կը կրէ Փունթայի Ամեր. Հիւանդանոցին մէջ Տոք. Ճէլէպեանէ։ Կեսարիոյ մէջ կը բուժուի և կը գոցուի վէրքը, եօթը տարիներ տառապեցնելէ յետոյ։ Իր Կեսարիա հասած տարին* (1903) *տեղւոյն վարժարանները կը միանային։ Հմայեակ Ուղուրլեան կ'ստանձնէ ֆրանսերէնի և հայրէնի դասերը, Միացեալ Ուսումնարանին մէջ։* 1903–1906 *այս պաշտօնը վարելէ յետոյ* 1907*ին վանքին բարձր. վարժարանի հայերէնի և ֆրանսերէնի ուսուցիչ կը կարգուի և* 1908–1910*ին ալ տնօրէն։* 1910*ին կ'ստանձնէ քաղաքին Արամեան աղջիկներու վարժարանին տնօրէնութիւնը և զայն կը վարէ մինչև տեղահանութիւն։ Իբր ուսուցիչ վարպետ է դասախօսութեան և ուսուցչական կազմին զուարթութեան առանցքն եղած էր միշտ ըստ Եղիազարեանի։ Ունէր* «Գիւղի տղուն երգերը» *անուն ոտանաւորներու և* Նորավէպերու *երկու հատորներ և ոտանաւորներ և արձակ գրութիւններ գրեթէ թրքահայ բոլոր լրագիրներուն և պարբերականներուն մէջ։ Իր գրած մէկ նորավէպին՝* «Վարժապետին Աղջիկը»*ին դէմ, մեծ աղմուկ յարուցին Կեսարիոյ Յիսուսեան միաբանութեան անդամները։*

*Ինքն կազմակերպած է Հ. Բ. Ը. Միութեան Կեսարիոյ մասնա-*



*ճիւղը, և անդամ էր Գաւառին Երեսփոխանական ժողովին՝ իբր Զօմախլուի երեսփոխան։* 1914 *Յուլիս* 21*ին իր տունը կը խուզարկուի։ Իր կինը՝ Տիկ. Հայկանուշ (Ծն. Մնտիկեան) վախէն կ'իյնայ անկողին և կը մեռնի Սեպտ.* 15*ին, երկու որբ աղջիկներ թողլով։* 1915 *Յուլիս* 18*ին կը ձերբակալուի և բանտ կը նետուի։ Երեք օր յետոյ* 135 *հոգիներու խումբով մը շղթայակապ կը տարագրուին Ազիզիյէի, Ալպիսթանի ճամբով դէպի Հալէպ, հրաշքով պրծելով սպանդէն։ Հալէպէն կ'երթայ Դամասկոս։ Զինադադարէն յետոյ իրեն կը յանձնուի Քէլէկեան և Սիսուան Որբանոցին տնօրէնութիւնը։ Կիլիկիոյ պարպումէն յետոյ երբ որբանոցները Պէյրութ կը փոխադրուին ինքն կ'անցնի Պոլիս, ուր պահ մը պաշտօնավարելէ յետոյ Կեդրոնականի մէջ Գալֆայեան որբանոցի ուսումնապետութեան պաշտօնը կ'ստանձնէ և կը վարէ ցարդ։ Ինքն պատրաստած է* «Երեքդարեան պատմութիւն Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ Պալաթու (1627–1931) *պատմական կարեւոր երկը, և հաւաքած՝* Խասգիւղի զերեզմանատան շիրմաքարերու տապանագիրները» *որոնք կցուած են* «Յիշատակարան հարիւրամեայ Յոբելեանի Խասգիւղի Ս. Ստեփանոս եկեղեցւոյ» (1831–1931) *հատորին* (*էջ* 125–212)։

*ՈՒՂՈՒՐԼԵԱՆ ՄԿՐՏԻՉ ԽԱԼՖԱ.— Մկրտիչ Խալֆա, որ միանգամայն սարկաւագ և լուսարար էր, ծնած էր* 1830*ին Կեսարիա։ Իր աշակերտներէն Տ. Ե. Եղիազարեան կը նկարագրէ զինքը*, «Ճերմակով մոխրոտած ցանցառ մօրուքով, վարի մասը թանձր, եւ մի քիչ կապուտցած քիթով, վերջապէս մշտաթարթափ եւ պղտոր աչքերով դէմքը որ վերջին տարիները արդէն սկսած էր իր ապագայ կմախքին ցից մասերն ու խոռոչները երեւան բերել, այնքան նիհարցած էր...: Սովորաբար հինցած *ճիւպպէ* մը կը կրէր՝ իր կռնակը, եւ միշտ անձուկ հին ֆէս մը՝ իր գլուխը ... գրեթէ միշտ կորաքամակ էր եւ գլխիկոր, համակերպող մարդու մը վեհերոտութեամբ, այնպէս որ կարծես թէ անտեսանելի բայց անտաս լուծի մը ներքեւ ճնշուած էր իր գլուխը»:

*Այս պարզուկ մարդը աւելի քան* 40 *տարիներ* (1859–1901) *Ս. Լուսաւորիչ եկեղեցիին և անոր յարակից վարժարանին մէջ շունչ և կորով սպառած է՝ լուսարարական և ուսուցչական կրկին պաշտօններով։ Մկրտիչ սարկաւագ տիպար լուսարար մըն էր եկեղեցին բարեզարդելու համար իր ունեցած փոքր ճաշակով և եկեղեցական արարողութիւններու մէջ ունեցած հմտութեամբ։ Առանց բանաւոր պատճառի օր մը բացակայ եղած չէ։ Ինքն կատարեալ տօնացոյց մըն էր, և գոց գիտէր ամբողջ շարականները, գիրքերը և եթէ մէկը սխալմամբ ուրիշ շարական մը կարդար անմիջապէս միւս դասէն կը շտկէր սխալը։*

*Իբր կրթական մշակ՝ կոչուած Մկրտիչ Խալֆա, կամ Մկրտիչ աղա, կեսարական աղաւաղման «Մկրչաա»* 40 *տարի դաս տուած է եկեղեցւոյ շրջափակին մէջ, սորվեցնելով այբուբենը, քերական կարդալը և հեգելը։ Իր մանկավարժական մասնագիտութիւնն !? էր այբուբենը, որ ուսուցանելու զարմանալի մեթոտ մը ունէր ըստ Տ. Ե. Եղիազարեանի։ Իւրաքանչիւր տառի ձեւին, անունին վրայ շինած էր պատկեր մը, պատմութիւն մը, որով թէ՛ կ'զբօսցնէր և թէ կ'ուսուցանէր։*

«Մանկավարժութիւն ինչ ըսել է չէր գիտեր, նոյնիսկ մանկավարժ բառն անգամ լսած չէր թերեւս, բայց ի բնէ ծնած էր կատարեալ մանկավա°րժ մը. ծաղկոցին քերական կարդացող աշակերտները լաւ կը յիշեն թէ ո°րպէսզի դիւրութիւններ հնարած եւ ստեղծած էր այդ փոքրիկներու մտքին մէջ տպաւորելու

համար: Հայկական բոլոր տառերուն համար զատ զատ անուններ, նմանութիւններ հնարած էր որ ամէնէն բթամիտ փոքրիկը մէկ շաբթուան մէջ անպատճառ կ'իւրացնէր եւ հաճոյքով եւ սիրով կարդալու փափաք մը կ'ունենար: Դասաւանդութիւնը հեռուէն դիտող մէկը խնդալէն կը ճաքէր տեսնելով այդ ծերունիին 5–6 տարեկան փոքրիկներուն հետ վարուելու կերպը: Դանիէլ Վարուժան երբ արգիլեց գաւազանը, իր գաւազանը բացառութիւն եղաւ: Իր գաւազանը բազուկի մը հաստութեամբ վառարանի հասարակ փայտ մըն էր եւ փոքրիկի մը ձեռքին զարնելու համար երկու ձեռքով այնքան վեր կը բռնէր որ կարծես թէ պզտիկին գլուխը պիտի պատռէր, մինչդեռ պզտիկները վարժ՝ ձեռքերնին կը բանան եւ մէկ կողմէն կ'աղաչեն *«աման Մկրչաա պիր տահեա եափմամ»*: Այդ պահուն կամացուկ մը կ'իջեցնէ պզտիկին ձեռքին վրայ. *«հայտէ պու տէֆա պաղըշլատըմ սանա, պիր տահա եափմա»*: Այս պատճառով Մկրտչաղայի անվնաս փայտը անփոփոխ մնաց: Իր մահէն վերջը աւելի գնահատուեցաւ որովհետեւ անոր նման յաջորդ մը գտնել անկարելի էր» *(Գէորգ Մարթաեան): Անիկա երկար ատեն Կեսարիոյ վարժապետներուն նահապետն էր: Մօրուքը ճերմկցուցած էր պզտիկներուն քով, Հայ այբուբենին մէջ զորոնք կը նմանցնէր կենդանիներու՝ իրենց ձայնին կամ կազմութեան համաձայն: Գաւազանը՝ զոր երբեմն օդին մէջ շարժելով կը դիւթէր տղաքները, երբեմն պաշտօն ունէր կարգի բերելու մանուկը թեթեւ չաթուփաթով՝ միշտ ձեռքն էր, անբաժան երգն իր պաշտօնին մեծութիւնը յիշեցնելու: Հայերէն քիչ մը կը հասկնար առանց կարենալ խօսելու: Իր ամէնէն երկայն համբերութիւնն էր գիրքերուն մէջ մինչեւ հին ոճով քերականին վերջը, մինչեւ* աշխարհագրականը, *զոր ծայրէ ծայր գոց ըրած էր: Անոր պաշտօնն էր առաջնորդել մանրերը անսայթաք մինչեւ հոն ուր կ'աւարտի քերականը:*

1901*ին կը մեռնի կարճատեւ հիւանդութենէ մը յետոյ եւ կը թաղուի Լուսաւորիչի շրջափակին մէջ, դպրոցին մօտիկը: Իր տապանաքարին վրայ կը կարդացուէր.* **«Աստ հանգչի Մկրտիչ Սարկաւագ Ուղուրլեան քառասնամեայ աշխատաւոր եկեղեցւոյս եւ վարժարանիս»** (*Տ. Ե. Եղիազարեան*, Արեւելեան Մամուլ, 1906, *էջ* 813–818):

*ՁԱՄՈՒՐԵԱՆ ՅԱԿՈԲ Գ.— Կեսարացի, աշակերտ Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեանի:* 1880*ական թուականներու սկիզբէն Պոլիս հաստատուած եւ առեւտրական գործերով պարապած է մինչեւ* 1904, *միեւնոյն ատեն հեռու չմնալով մտաւորական զբաղումներէ: Տակաւին Կեսարիա գտնուած ատեն Իւթիւճեանի* Մասիսին *եւ Փանոսեանի* Մանզումէին *մէջ ունի շահեկան գրութիւններ, թղթակցութեան ձեւին տակ կամ բոլորովին անջատ նիւթերու վրայ: Իր տեղեկութիւններէն այս գիրքին մէջ ես ալ օգտուած եմ ինչպէս տեսնուեցաւ:* 1886*ի* Մասիսի *«Վտարանդին» կը կարծիմ թէ ինքն է:* 1904*ին Կեսարիա վերադառնալէ յետոյ,* 1906*ին երեսփոխան ընտրուեցաւ եւ* 1910*ին վերընտրուեցաւ Թոմարզայէն:* 1907*ին տնօրէն ընտրուեցաւ Կիւմչեան վարժարանի եւ* 1908*ին Գաբրիէլ Թագւորեանի պաշտօնավարութեան շրջանին, մինչեւ* 1910 *պահեց ներքին տնօրէնի եւ մատակարարի պաշտօնը:* 1910*ին Կեսարիոյ Ուսումնական Խորհուրդը վիճակին մէջ գտնուած* 35 *դպրոցներուն վրայ հսկողութիւն կատարելու եւ դպրոց չգտնուած տեղերն ալ վարժարաններ բանալու համար զինքը կրթական տեսուչ կը կարգէ, պաշտօն տալով նաեւ որ Կիրակի օրերն ալ գիւղերու եւ գիւղաքաղաքներու մէջ դպրոցներու պէտքը շեշտող հայերէն եւ թուրքերէն բանախօսութիւններ ընէ* (Բիւզանդիոն, *թ.* 4115)*: Այս պաշտօնը վարեց մի քանի տարիներ:* 1908*էն յետոյ Պոլսոյ* Արեւելքին *աշխատակցած է իր իսկական անունով եւ* Արմէն *ստորագրութեամբ: Գլխաւոր աշխատակից* Հայեկ *թերթին:* 1915*ին տարագրութեան ճամբուն վրայ նահատակուած:*



*ՁԱՏՐՃԵԱՆ ՅԱԿՈԲ.— Կիւմչեանի ուսուցիչ* 1913–15*ին, նահատակուած է Ամէլի Թապուրի մէջ զինուորագրուելէ յետոյ:*

*ՁՕԼԱՔԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ (յետոյ Տ. ԳԱՐԵԳԻՆ ՔՀ.).— Ուսուցիչ Կիւմչեան վարժարանի* (1900–1) *եւ Միացեալ Ուսումնարանի* (1903–4)*: Յետոյ քահանայացած:*

*ՁՕԼԱՔԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ.— Ուսուցիչ Կիւմչեանի մէջ* 1913–4*ի եւ ապա զինուորագրեալ: Վերապրող:*

*ՁՕՄԱԽԼՈՒԵԱՆ ԴԱՒԻԹ.— Էվէրէկցի, աշակերտ համբաւաւոր թըրքագէտ Մոլլա Գրիգորի: Էվէրէկի վարժարանին թուրքերէնի դասերը եւ տնօրէնութիւնը կ'ստանձնէ պահ մը:* 1875*ին կը հրաժարի տնօրէնութենէ* (Մանզումէ, *թ.* 2904) *եւ* 1879*ին ուսուցչութենէ եւ կ'ըլլայ կառավարական սնտուկին սեղանաւոր:*

*ՊԱԼԵԱՆ ՌՈՒԲԷՆ.— Ֆէնէսէցի, եւ Համ. Ամատունիի փայլուն աշակերտներէն մէկը,* 1893*ին Ֆէնէսէի վարժարանին մէջ պաշտօնի կը կոչուի իբր ուսուցիչ եւ հինգ տարի պաշտօն կը վարէ, յետոյ կը փոխադրուի Նիկտէ ուր եւս հինգ տարի պաշտօն կը վարէ իբր տնօրէն ուսուցիչ: Խոստմնալից երիտասարդ մը որ գրելու շնորհ ունէր: Վաղամեռիկ: Իր մասին Եղիազարեան գրած է* «Վաղամեռիկ Ռուբէն ամուր եւ ըմբշային կազմուածքի մը մէջ ունէր զգայուն եւ բանաստեղծ հոգի մը: Կանուխէն սկսած է գրելու: Դժբախտ սիրահարութիւն մը աւելի հրահրած է իր մէջ գրելու հակամիտութիւնը: Կայծակնահար նշենի մը որ մինչեւ այսօր կախուած կը մնայ Կէօլէմէնի ձորին վրայ եւ իր անմեղունակ Մաքրուհին —որուն ծնողքը մինչեւ վերջին վայրկեան անտարբեր մնացին իրեն հանդէպ— կը կազմեն առանցքը իր ոտանաւորներուն որոնց մէջ գոհարներ կային: Վերջէն Ռուբէն երջանիկ ամուսնական կեանք մը ունեցաւ, շնորհիւ Օր. Իսկուհիի որ այնքան համեստ, զարգացած, որքան գեղանի օրիորդ մըն էր»:

*ՊԱՂՋԷԵԱՆ ԱԲՐԱՀԱՄ ՎԱՐԺԱՊԵՏ. — Հին պատուելիներու դասէն ուսուցիչ մը որ պաշտօնավարած է վիճակին զանազան վայրերը: Պաղճը-օղլուն որ յիշեցի (տես էջ* 1166) *իբր* 1845*ին ուսուցիչ Էվէրէկի դպրատան, հաւանօրէն նոյնինքն այս Աբրահամ վարժապետն էր, որ* 1862*ին կը գտնենք Կէրմիր: Այս թուականին երբ Ստեփան պատուելի Եըլանճեան տնօրէն կ'ըլլար Կէրմիրի վարժարանին այս պատուելին Ծաղկոցին ուսուցիչ կը կարգուէր:*

ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ ԱԲՐԱՀԱՄ. — Ձայնաւոր ուսուցիչ Էվէրէկի, տարագրուած Մուսուլ, վերապրող. Պաղտատ հաստատուած։

ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ Ս. — Կէրմիրցի, և տեղւոյն Պարթեւեան վարժարանին նախընթաց աշակերտներուն մէջ ամենէն կարկառուն դէմքերէն մին, որ Կեսարիոյ և շրջակայից կրթական վերածննդեան գործին մէջ կատարած է խիստ կարեւոր դեր։ Նախ անիկա պաշտօնավարեց իբր օգնական դասատու իր ծննդավայրին Պարթեւեան վարժարանը, ապա Կեսարիոյ Ս. Սարգիս Թաղի Յակոբեան վարժ.ը, իբր տնօրէն և վերջը դարձաւ իր ծննդավայրը և երկու տարիի չափ կրկին հոն ուսուցչութիւն ընելէ յետոյ, մեկնեցաւ Իզմիր որուն եղեռնին զոհերէն մէկն ալ ինքն եղաւ (†1922)։ Ինքն շատ փափկասիրտ և մեղմ մարդ մը ըլլալով, ցաւալի է որ իր Կեսարացի աշակերտները չեն կրցած պէտք եղած չափով օգտուիլ իրմէ։ Դաւազանի և փալախայի սպառնալիքներէն նոր ազատագրուած կոպիտ աշակերտները ի չարն գործածած են անոր փափկասրտութիւնը։ Ոմանք կը կարծեն թէ Պաղտասարեան օգտակար չէ կրցած ըլլալ իր դասախօսելու մեթոտով, վասնզի առանց աշակերտներու կարողութիւնը նըկատի առնելու փիլիսոփայական նիւթերով կը խճողէր անոնց միտքը։

Պաղտասարեան, բանաստեղծ մը, փիլիսոփայ մը, արդիւնաւոր ուսուցիչ մը, և ինքնաշխատութեան հերոս մըն էր։ Իբր փիլիսոփայ, դանդաղաշարժ, անժպիտ ու բառին ամենալայն առումովը իտէալապաշտ մարդ մըն էր։ Իբր ուսուցիչ, զայն միշտ յարգանքով կը յիշեն անոնք որոնց միտքը ան գրաբարի ամենախրթին նրբութիւններուն, բնական գիտութեանց խորոցը, երկրաչափութեան տաղտուկներուն և երբեմն փիլիսոփայութեան մանուածապատ յորձանքներուն մէջ պտտցուցեր էր։ Իբրեւ ինքնաշխատութեան հերոս, ան ինքնիրեն սորվեր էր գերմաներէն և անգլիերէն լեզուները և զարգացուցեր էր իր ֆրանսերէնը ու վերջին քանի մը տասնեակ տարիները ընթացքին այս երեք լեզուներուն վրայ մասնաւոր դասեր կու տար Իզմիրի մէջ։ Հայ գրականութեան մէջ գերադաս, ունի տաղաչափեալ երկու երկասիրութիւններ ըստ Եղիազարեանի Աւրինէ և Վարդի բերբ և ըստ Դանիէլ Պօյաճեանի և Պետրոս Մարթաեանի Վարդի վէպ և Խօսուն Ծեոյլ անուններով և ուրիշ աշխատասիրութիւններ։ Խօսուն Ծեոյլը գնահատուած է իբր ոսկեդարեան մաքուր գրաբար Հ. Ղ. Ալիշանէ։ Ըստ Գ. Ս. Դ.ի Կարնոյ Սանասարեան վարժարանի հայերէնի դասախօս եղած է Տ. Գուրգէնէն յետոյ։

Յովհաննէս Պալըգճեանի Կ. Պոլիս հրատարակած Ֆէլէք հանդէսին մէջ (1882, էջ 161) ունի ինքնագիր ոտանաւոր մը «Զեփիւռ գարնան» խորագրով և թարգմանութիւնը՝ Վիքթոր Հիւկոյի «Իմս հրեշտակ» բանաստեղծութեան։ Իրն է նաև 1885ին Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ յիշատակարանը (տես վերը էջ 900-901) որուն առաջին տառերը կը կազմեն «բանս է Խաչատրոյ Պաղտասարեան» նախադասութիւնը։ Վերջին տարիներուն անիկա Եղիազարեանի յայտնած էր թէ քանի մը գիւտեր ալ ըրած է որոնք կարեւոր յեղաշրջում առաջ պիտի բերէին գիտական աշխարհին մէջ երբ հրապարակուէին և թէ հարուստի մը նիւթական օժանդակութեան պէտք ունէր Եւրոպա անցնելու և իր գիւտերը արժեցնելու համար։ Դժբախտաբար իրեն այդ



առիթը առանց ընծայուելու իր հետը գերեզման տարաւ իր գաղտնիքը Թրքական վայրագութեան զոհ դառնալով։



ՊԱՑԻԿԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ (այժմ Տ. Ագդէ քհ.).— Ծնած է 1854ին, Կ. Պոլիս։ 1891ին Կեսարիոյ Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը կը հրաւիրուի իբր ուսուցիչ ձայնագրութեան և հսկող։ Մինչեւ 1896 հոն պաշտօնավարելէ յետոյ կը դառնայ Կ. Պոլիս ուր 1904ին կը ձեռնադրուի Թոփ Գաբուի Ս. Նիկողոս եկեղեցւոյն վրայ քահանայ։ Յետոյ տեղափոխուած է Խասգիւղ, ուր ցարդ կը քահանայագործէ։

ՊԱՏԱՆԵԱՆ ԱՐԱՄ.— Կեսարացի, աշակերտ Կիւմշեան վարժարանի և յետոյ (1900-1) անդ ուսուցիչ։ Ճարպիկ և ձեռներէցութեան տիպար այս անձը յետոյ վաճառականութեան ձեռնարկած է։ 1915ին տարագրուած, և Զինադադարէն յետոյ անցած է Կիպրոս ուրկէ տեղափոխուած է Աթէնք ուր կ'ապրի հիմա ապուխտավաճառութեամբ։

ՊԵՏՐՈՍԵԱՆ ԿԻՒԼՊԷՆԿ.— Ֆէնէսէցի և աշակերտ Տօնիկեանի։ Ուսուցիչ Ֆէնէսէի վարժարանին մէջ մինչև տեղահանութեան օրերը։ Հնչակեան և թղթակից Հմայեակ Արամեանցի Կոհակին։ 1915ի տեղահանութեան օրերուն մատնիչի զազիր դերը կատարած և Ջէքիի աջակիցը եղած է Էվէրէկ-Ֆէնէսէի մէջ անոր գործադրած գազանային վայրագութեանց, Տօնիկեանի հետ։ Հիմա կ'ապրի ի Ֆէնէսէ։

ՊԵՏՐՈՍԵԱՆ ՄԻՆԱՍ (ԱՍՈՒՊ). — Ծնած է Պրուն Գըշլա, Եօզղատ։ Աղքատ ծնողքի զաւակ, Տ. Թոդիկեան վարժարան մը յաճախած է, և յետոյ Կեսարիա գալով իր ուսումը ստացած է Բողոքականաց Արգէոս վարժարանին մէջ։ Ինքնօգնութեամբ տիրապետած էր թուրքերէն և հայերէն լեզուներուն, գիտէր նաև յունարէն։ Իր գրական կեղծանունն էր Ասուպ, կ'ստորագրէր նաև Պիտար։ Նուիրուած մը կրթական և յեղափոխական ասպարէզներուն։

Իբր ուսուցիչ և տնօրէն ծառայած է Կեսարիոյ Արամեան վարժարանին, ինչպէս նաև բազմաթիւ յետամնաց գիւղերու վարժարանները և շուրջ 30 տարիներ, երիտասարդութիւնը վարելով յեղափոխական գաղափարներով, որոնցմով ինքն սնած էր, ընկեր և աջակից հանդիսանալով ժիրայրի և թև ու թիկունք Ջելլոյի (Թորոս Ծառուկեան) և Կիւլպէնկ Համալեանի որ իր աներձագն էր։ Ինքն ալ ձերբակալուած է 1894ին և բանտարկուած երկար ատեն։ 1908ի Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ, կը շարունակէ իր ուսուցչական և յեղափոխական գործունէութիւնը Կեսարիոյ շրջանին մէջ, մասնաւորապէս Թոմարզայի շրջանը ուր կը վարէ ուսուցիչ-տնօրէնի պաշտօն 1910-13։ 1915ին Կեսարիա ձերբակալուած, և 8 Յունիս 1915ին առաջին տարագիրներու խումբին հետ ճամբայ հանուած և նահատակուած։ Բեմբասաց և կազմակերպիչ ու գործիչ։

ՊԷՅԼԷՐԵԱՆ ՆԱԶԱՐԷԹ.— Կեսարացի, որբ, սան Կ. Պոլսեցի Սարգիս

Արապեանի։ 1901ին Ս. Կարապետ վանքի վարժարանէն վկայուած։ Ուսուցիչ Կիւմշեան վարժարանի մէջ։

ՊԸՏԸԼԻԿԵԱՆ կամ ՊՕՂՈՍԵԱՆ ՍԱՐԳԻՍ. — Կեսարացի, որբ, սան Տիկ. Վերժին Տոքթ. Հ. Նագգաշեանի։ Ս. Կարապետ վանքի վարժարանէն շրջանաւարտ 1903ին, և ուսուցիչ 1903–1907ին Նէվշէհիրի Ազգ. վարժ.ին մէջ։ 1908էն յետոյ Պոլիս։ Հիմա Բարիզ, գրավաճառ։ Յօդուածագիր Հայ լրագիրներու։

ՊՕՀՃԷԼԵԱՆ ՅԱԿՈԲ. — Ծնած է Կեսարիա 5 Մայիս 1882ին, աշակերտ Կիւմշեան վարժարանի որմէ շրջանաւարտ եղած է, 1900ին, իրեն ընկեր ունենալով Արշակ Սէֆէրեան (ժամագործ Կ. Պոլիս), Յակոբ Պալըքճեան (իւղի վաճառական Գահիրէ), Կարապետ Խայըրլըեան (Գահիրէ), Արշակ Մնտիկեան (Միլանօ)։ Դպրոցը աւարտելէ յետոյ հինգ տարի ուսուցչութիւն ըրած է Կիւմշեան վրժ.ի մէջ։ Յետոյ մտած է առեւտրական ասպարէզ, պաշտօնեայ դառնալով 1905ին Թադէոս Մնտիկեան և Որդիք վաճառատան։ 1909-15 վարած է նոյն տան Մերսինի մասնաճիւղը։ Տարագրուած է Հոմս, ուրկէ Զինադադարին վերադարձած է Մերսին և մանիֆաթուրայի գործին սկսած է։ Կիլիկիոյ պարպումին կ'անցնի Կիպրոս և կը հաստատուի Լառնաքա և կը շարունակէ անդադար իր առեւտրական գործը։



ՊՈՒՏԱՂԵԱՆ ՅԱԿՈԲ.— 1880ական թուականներէն սկսեալ մօտաւորապէս 20–25 տարիներ ուսուցչական պաշտօն վարած է Կեսարիոյ վարժարաններուն մէջ, մասնաւորապէս Հայկեան վարժարանին և Միացեալ ուսումնարանին մէջ։ Իր մասնագիտութիւնն էր ֆրանսերէն։

ՊՈՒՏԱՂԵԱՆ ԿԻՒԼԻՆԻԱ ԵՒ ՎԵՀԱՆՈՅՇ (Օրք.).— Երկուքն ալ Արամեանին մէջ իբր ուսուցչուհի պաշտօնավարած են, առաջինը՝ 1905–7ին և երկրորդը՝ 1912–1915ին։ Օր. Վեհանոյշ տարագրուած է և մեռած Պէյրութի մէջ։

ՊՐՈՒՍԱԼԸԵԱՆ ԼԵՒՈՆ.— Ուսուցիչ Հայկեան վրժ.ի։ 1915ին տարագըրուած Դամասկոս, ուր բժշկութիւն ընել սկսած է։

ՊՕՅԱՃԵԱՆ ԱՐՇԱԼՈՅՍ (Օր.).— Ուսուցչուհի Արամեան վարժարանի։ Տեղահանութեամբ տարագրուած Րէս-իւլ Այն։ Զինադադարէն յետոյ կը դառնայ Պոլիս և կը հետեւի հիւանդապահութեան։

ՊՕՅԱՃԵԱՆ ԴԱՆԻԷԼ.— Ծնած է 1860ին Կէրմիր, և իր ուսումը ստացած ծննդավայրին Պարթեւեան վարժարանին մէջ երբ անոր տնօրէն էր Ստեփան պատուելի Երլանճեան և կը բոլորէր չափազանց փայլուն շրջան մը։ Հայկաբանութիւնը սորված է Ստեփան պատուելիէն։ Աշխարհագրութեան իր ուսուցիչը եղած է Յովհաննէս Տիւմանեան և Ֆրանսերէնի ու թուաբանութեան՝ Դաւնիկ Մելքեան։ Իսկ բոլորովին ինքնաշխատութեամբ ուսած է կրօնագիտութիւնը և թուրքերէնը։ Նախ առեւտրական ասպարէզ կը նետուի (1872) և վա-



ճառականի մը քով կը մտնէ Մարզուան, սակայն տարի մը յետոյ կը թողու և Սիմ-Հաճը գիւղին մէջ ուսուցիչ կ'ըլլայ երկու տարի (1873–1875)։ Յետոյ 1875ին Էվերէկի Ազգ. վարժարանին տնօրէնութիւնը կ'ստանձնէ (Մանզումէ, թ. 2904) և տարի մը յետոյ ուսուցչական պաշտօնով կ'երթայ Տարսոն, ուր 2 1/2 տարի պաշտօն կը վարէ մասնաւոր վարժարանի մը մէջ, յետոյ կ'անցնի Ատանա, ուր Կիլիկեան Ընկերութեան մի քանի ամիս առաջ մեծ եռանդով ու յոյսերով բացած, սակայն քիչ ատենէն քայքայման վիճակին հասած մասնաւոր վարժարանին տնօրէնութեան կը կոչուի (1877) և աշակերտներու թիւը 3-4 ամսուան մէջ կրկնապատիկը կ'աճի։ Հոն կը դասախօսէ գրաբար, թուրքերէն, թուաբանութիւն, գրահաշիւ, աշխարհագրութիւն և պատմութիւն։ Իրեն կը գործակցի իբր Ֆրանսերէն լեզուի ուսուցիչ Վարդան Տէլիֆէր որուն յետոյ կը յաջորդէ Ֆրանսացիմը՝ Մ. Շառլ։ Ժողովուրդը այն աստիճան գնահատած էր վրժ.ին կանոնաւորութիւնը որ երբ 1880ին Միացեալ Ընկերութիւնը կը ստանձնէ Ատանայի Ազգ. վարժարանին հոգը և Պոլիսէն ուսուցիչներ կը ղրկէ, ո՛չ ծնողքները և ո՛չ ալ Հոգաբարձուները կ'ուզեն իրենց վարժարանը միացնել Ազգ. վրժ.ին, սակայն վերջապէս տեղի կու տան Բաղ. ժողովին ստիպումներուն առջեւ։ Դանիէլ Պօյաճեան ինքն Միացեալի հոգատարութեան յանձնուած Աբգարեան վարժարանին մէջ ուսուցիչ եղաւ և ժամանակ մը պաշտօնավարելէ յետոյ դարձաւ իր ծննդավայրը՝ Կէրմիր և ստանձնեց վարժարանին տնօրէնութիւնը որ հազիւ մէկուկէս տարի (1884) կրցաւ վարել, վասնզի Կէրմիրցի առեւտրականներ իրենց ծննդավայրը լքելով աստ անդ ցրուած էին և վարժարանին հասոյթի աղբիւրները նուազած։ Իր այդ կարճ պաշտօնավարութեան շրջանին յաջողեցաւ արծարծել մեծ ու փոքր տղոց մէջ հայերէն խօսելու փափաքը, այնպէս որ Թրքախօս տղաք սկսան ամէն տեղ հայերէն խօսիլ։ 1885ին կը հրաւիրուի Կեսարիա Հայկեան վարժ.ի մէջ դասախօսելու, և 1886ին ինքն կը կարգուի տնօրէն նոյն դպրոցին։ 1888ին երբ Հայկեան, Յակոբեան և Կիւմշեան վարժարաններու վարչութիւնը կը միանայ երեք թաղերէն ընտրուած Միացեալ Հոգաբարձութեան մը մատակարարութեան տակ, Դանիէլ Պօյաճեան՝ Հայկեան և Յակոբեան վարժարաններու տնօրէն կը կարգուի, իսկ Կիւմշեան վարժարանի՝ Դանիէլ Սարաֆեան։ 1889ին ընդհ. տնօրէն կը կարգուի Երուանդ Երկաթ։ 1890ին դարձեալ կը քայքայուի միութիւնը և ինքը կը մնայ տնօրէն-ուսուցիչ Հայկեան վարժարանի մէջ, իսկ Դ. Սարաֆեան Կիւմշեանի։ 1892ին կը հրաժարի տնօրէնութենէ և կը մնայ հոն իբր պարզ ուսուցիչ աւելի քան տասնեակ մը տարիներ, դասախօսե-



լով նաև Միացեալ Ուսումնարանին մէջ։ 1905ին տնօրէն–ուսուցիչ կը կարգուի Արամեան աղջիկներու վարժարանին ուր երկու տարի կը պաշտօնավարէ։ 1907ին Կիւմշեան վարժարանի մէջ ուսուցչութեան կը կոչուի և երկու տարուան պաշտօնավարութենէ մը յետոյ 1909ին Ս. Կարապետի ժառանգաւորաց վարժարանը կը տեղափոխուի։ Հոն կը դասախօսէր աշխարհագրութիւն և կրօնք։ 1911ին հրաժարելով կ'ստանձնէ Հայկեան վարժարանի մէջ ուսուցչական պաշտօն և կը մնայ նոյն պաշտօնին մէջ մինչև տեղահանութիւն, երբ կը տարագրուի մինչև Մա՛ան։ Ջինադադարէն յետոյ, դարձեալ ուսուցչութեան նուիրուեցաւ 1919ի կէսէն Հ. Բ. Ը. Միութեան որբանոցներուն մէջ ծառայելով, նախ Տէօրթ Եօլի Քէլէկեանի մէջ և ապա (1922) Պէյրութ։ Դանիէլ Պօյաճեանի կեանքը առաւելապէս կապուած է Կեսարիոյ քաղաքին վարժարաններուն հետ, վասնզի մերձաւորապէս 25 տարիներ ան անոնց մէջ դասախօսած է թուրքերէն, հայերէն գրաբար և կրօնագիտութիւն։

ՊՕՅԱՃԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ.— Ուսուցիչ ֆրանսերէնի Միացեալ Ուսումնարանին և թաղային վարժարաններու մէջ 1880ական թուականներէն սկսեալ։

ՊՕՅԱՃԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ.— Ծնած է 1887ին Կեսարիա, Դ. Պօյաճեանի աշակերտ։ Երբեմն կառավարիչ Հայկեան վարժարանի (1910) և ապա երաժշտութեան ուսուցիչ Միացեալ Ուսումնարանի և Կիւմշեան վարժարանի (1913–15)։ Հնչակեան, և կազմակերպիչ Հնչ. Ուսանողական Միութեան ջութակի խումբին։ Վարպետ ջութակահար։ Երգը եղած է իր առաջին և վերջին ձայնը։ Կախաղան հանուած է 1915 Օգոստ. 20ին։ Վերջին վայրկեանին իր խօսքերը եղած են. «Ես երկինք հարսնիք կ'երթամ, թող նշանածս փոքր եղբայրս առնէ»։

ՊՕՏԻԿԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Ծնած է Թալաս 1858ին։ Աշակերտ Կէրմիրի Պարթեւեան վրժ.ին։ 1891ին թուրքերէնի դասախօս ի Ֆէնէսէ և ապա տնօրէն անդ։ 1893ին կը թողու պաշտօնը և երկար տարիներ ուսուցչական և տեսչական պաշտօններ կը վարէ գաւառական զանազան վարժարաններու մէջ։ Հմուտ էր հին և նոր հայերէնի։ Ընդհ. պատերազմին Պոլիս էր և Հանրային Պարտուց վարչութեան պաշտօնեայ։ Վերջին տարիներս կը վարէր Գարթալի Ազգ. վարժարանի տնօրէնութիւնը։ Մեռած 1930ին Կ. Պոլիս:

ՍԱ'ԱՏԷԹԵԱՆ ՀԱՅԿ.— Կեսարացի, ուսուցիչ Յիսուսեանց և Կիւմշեան վարժարաններու։ 1915ին տարագրութեան ատեն կը նետուի Րագգա որմէ Ջինադադարին կը դառնայ Հալէպ ուր կը մնայ։

ՍԱՀԱԿԵԱՆ Տ. ՄԵՍՐՈՊ ՔՀ.— Ծնած է Էֆքէրէ 1865ին։ Իր նախակրթութիւնը կ'ստանայ իր գիւղին մէջ և ապա Կեսարիա քաղաքը։ 1894–1897 ուսուցչական պաշտօն կը վարէ Կիւմշեան վանժարանի մէջ։ 1897ին քահանայ կը ձեռնադրուի Ստեփան եպ. Սանտալճեանէ իր ծննդավայրին վրայ, որուն մեծ ծառայութիւն մատուցած է, առաջին անգամ իր երեց կնոջ միջոցաւ պատճառ դառնալով գորգագործութեան հոն ներմուծման։ Այս գործը տակաւ առ տակաւ տարածուած է բոլոր շրջականները, և ո՛չ միայն Էֆքէրէի Հայերուն այլ նաև Թուրքերուն և Յոյներուն օգտակար եղած է տնտեսապէս։ Նոյնպէս այս քահանան հեռատեսութիւնը ունեցած է 1908ին ո՛չ միայն իր երկու զաւակները Ամերիկա փոխադրելու այլ երկու ամիսէն դառնալով իր ծննդավայրը՝ թելադրած է երիտասարդները գաղթել Ամերիկա։ Վերջապէս ինքն ալ 1912 Սեպտեմբերին ամբողջ ընտանեօք գաղթած է Ամերիկա ուր վախճանած է 1917ին։



ՍԱՀԱԿԵԱՆ Տ. ՄԵՍՐՈՊ ՔՀ.

ՍԱՐԱՖԵԱՆ ԴԱՆԻԷԼ.— Կեսարացի. իր ուսումը առած է Պոլսոյ մէջ, ուրկէ գալով իր ծննդավայրը կ'ստանձնէ Կիւմշեան վարժարանի տնօրէնութիւնը 1881ին, (տես վերը, էջ 1109–1110) և կը կարգաւորէ վարժարանը զայն հանելով Տէր Թոդիկեան հնօրեայ դրութենէն։ Ան իր պաշտօնին գիտակից և խղճամիտ անձնաւորութիւն մըն էր, որ գործին պահանջած ոգւովը առլցեալ, կապուած էր իր պաշտօնին սիրտի ազնուութեամբ և սիրով։ Ինքն միշտ խորհրդակիցը եղած է Հոգաբարձութեան, թեթեւցնելով անոնց ճիգերը՝ նիւթական պէտքերը հոգալու համար վարժարանին։ Մինչև 1897, 16 տարիներ անընդհատ ան վարեց այս վարժարանը և ապա թողուց զայն և եղաւ առեւտրական (Բիւզանդիոն, թ. 105) և զբաղեցաւ գորգի վաճառականութեամբ մինչև խոր ծերութիւն։ Վարած է զանազան ազգային պաշտօններ, ուղղամտութեամբ և անաչառութեամբ։ Մեռած է 1930ին կամ 1931ին Պոլիս։

ՍԱՐԱՖԵԱՆ ՎԻՔԹՈՐԻԱ (Տիկ.) (Ծն. Ուզունեան).— Ծնած է 1877ին Թալաս, և իր նախակրթութիւնը ստացած Թալասի Ամերիկեան աղջիկներու վարժարանին մէջ և 1896ին շրջանաւարտ ըլլալէ յետոյ անոր բարձրագոյն վարժարանէն պաշտօնավարած է հոն իբր ուսուցիչ (1896–1902) նախակրթարանին մէջ։ 1902ին կը մեկնի Զմիւռնիա ուր կը մտնէ Ամերիկեան աղջիկներու Գոլէճը և անոր մանկավարժական շրջանը կ'աւարտէ 1904ին և կը դառնայ Թալաս ուր այս անգամ կ'ստանձնէ Ամերիկեան բարձրագոյն վարժարանի մէջ ուսուցութեան պաշտօն և կը պաշտօնավարէ 10 տարի իբր մաթիմադիկի և գիտու-



թեան ուսուցիչ։ 1914ին կը փոխադրուի Իզմիրի Ամերիկեան Գոլէճը ուր կը մնայ մինչև 1919, և ապա կ'անցնի Ամերիկա ուր կը յաճախէ City Collegeի (W.Y.) Business Courseին։ 1925ին կ'ամուսնանայ Ջաքար Սարաֆեանի հետ, որ արկածով մը մեռնի 22 Օգոստ. 1935ին։ Տիկին Սարաֆեան հիմա Real. Estate Broker է։

ՍԱՐԴԻՍԵԱՆ ԱՐԻՍՏԱԿԷՍ.— 1871ին ծնած է Էվէրէկ և իր նախակրթութիւնը ստացած տեղւոյն Մեսրոպեան վարժարանին մէջ։ 1886 Սեպտ.ին կը մտնէ Պոլսոյ Կեդրոն. վարժարանը, և 1891ին շրջանաւարտ կ'ըլլայ և նոյն տարիէն սկսեալ Նառլը Գաբուի Խորէնեան, Գում Գաբուի Պէզճեան, Գում Գաբուի դուրսի վարժարաններուն մէջ կը դասախօսէ, յետոյ Սամաթիոյ Նունեան-Սահակեան (1892), Կէտիկփաշաի Մեսրոպեան (1893), Թոփ-Գաբուի Լևոնեան, Պալաթու Խորէնեան (1897) և Եէնի-Գաբուի Ս. Առաքելոց (1897) վարժարաններուն մէջ դասեր կ'ստանձնէ։ 1905ին Սուլթան Համիտի դէմ կատարուած մահափորձին իբր մասնակից կը ձերբակալուի և կ'աքսորուի, յետոյ կ'ազատի, և դարձեալ ձերբակալուելով կ'աքսորուի Կեսարիա։ 1912ին Կեսարիոյ Արամեան աղջիկներու վարժարանին մէջ կը պաշտօնավարէր։ Ցետոյ կ'երթայ Պոլիս, ուր կը մեռնի 1920էն յետոյ։

ՍԱՐԸԵԱՆ Տ. ՄԿՐՏԻՉ ՔՀ.— Զէփնեցի, Մանճըընի քահանան. ձայնագրութեան ուսուցիչ եղած է 1896էն սկսեալ վանքի Բարձր. վարժարանին։

ՍԵԹԵԱՆ ԳՐԻԳՈՐ.— Սեբաստացի, թուրքերէնի հմուտ փաստաբան, որ 1891ին պաշտօնի կը կոչուի իբր ուսուցիչ վանքին բարձրագոյն վարժարանին մէջ և հոն կը պաշտօնավարէ մի քանի տարի։

ՍԵՂԲՈՍԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— Թալասցի, 1896ին շրջանաւարտ վանքին բարձր. վարժարանէն։ Յաջորդ տարին իսկ կ'ստանձնէ Էֆքէրէի վարժարանին մէջ ուսուցչական պաշտօն (Բիւզանդիոն, թ. 141)։

ՍԵՂԲՈՍԵԱՆ ՀԱՑԻԿ.— Նոյնպէս Թալասցի, և սան նշանաւոր թուրքերէնի ուսուցիչ Կ. Պոլսեցի Միհրան Աբիկեանի։ 1901ին կ'աւարտէ վանքին բարձր. վարժարանի շրջանը և երեք տարի (1901-4) ուսուցչական պաշտօն կը վարէ նոյն վարժարանին մէջ։ Ցետոյ կ'երթայ Ատանա և առևտուրով կ'զբաղի։

ՍԷՄԻՋԵԱՆ ՍԵԴՐԱՔ ԹԱԹՈՒԼ.— Ֆէնէսէցի, տեղական անուանակոչութեամբ Սէմիզենց Տիշի Զիւրիւկենց ընտանիքէն, ի ծնէ անդամալոյծ և անթացուպերով քալող այս բարեմոյն և մանաւանդ իսկապէս անթերի դիմագծութիւն ունեցող տղան, Ամատունիի կարողագոյն աշակերտներէն Ռուբէն Պալեանի դասընկերը, պաշտօնակիցը և մտերիմը եղած է։ Ամատունի երբ 1892ին ձերբակալուեցաւ Սէմիզեան ինքն եղաւ դաստատու և 1892–1903ին Պօտիկեանի, Տօնիկեանի, Գունտուրաճեանի և Թիմուրեանի տնօրէնութեանց շրջանին միշտ մնաց օգնականը անոնց։ 1903-5՝ ինքն եղաւ տնօրէն Ֆէնէսէի և 1905–1912՝ Էվէրէկի և 1912–14ին կրկին Ֆէնէսէի վարժարաններուն։ 1914ին պօմպայի դէպքէն յետոյ կը բանտարկուի և բանտը կը մնայ տարագրութեան առեն և իր ճարպիկութեամբ սիրուած ներքին պաշտօնեաներէն, կը վայելէ անոնց հնչուն պաշտպանութիւնը.... Հիմա կը գտնուի Սուրիա։ Տնօրէնութիւնը վարած է կատարեալ ձեռնհասութեամբ։ Աւանդած է հայերէն, ֆրանսերէն, գիտութիւն, թուրքերէն և այլ։ «20 տարուան իր անընդհատ աշխատութեանց կենդանի ապացոյցներն են Գաբրիէլ Թագւորեանը եւ Տիգրան Տայեանը» (Եղիազարեան)։



ՍՐՎԱՃԵԱՆ ՑԱԿՈԲ.— Բնիկ Կեսարացի, շրջանաւարտ Թալասի Ամերիկեան վարժարանի։ Նախ պաշտօնավարած է իբր ուսուցիչ Կեսարիոյ մէջ և ապա 1911ին Թոմարզայի Սահակեան վարժարանը, որուն վերջին ուսուցիչը եղած է։ Իբր կուսակցական, Մինաս Պետրոսեանի հետ Թոմարզայի Հնչակեան զօրաւոր մասնաճիւղը կազմակերպողներէն մէկը եղած է։ Վարպետ հիպնոսիս: 1915 Օգոստոսին տարագրութեան ճամբուն վրայ մեռած է։



ՍՏԵՓԱՆԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ.— Ծնած է 1868ին Թալաս։ Քեռորդին Երուսաղէմի Եսայի Պատրիարքին։ Նախակրթութիւնը իր ծննդավայրին մէջ ստանալէ յետոյ գացած է Երուսաղէմ, ուր սորված է լուսանկարչութիւն, իրեն մօրեղբօր հոգածութեամբ։ Ցետոյ անցած է Պոլիս և մտած՝ Գեղարուեստից վարժարանը և անկէ շրջանաւարտ ըլլալէ յետոյ դարձած է Կեսարիա ուր 1891էն սկսեալ ստանձնած է վանքին բարձրագոյն վարժարանին գծագրութեան ուսուցչութիւնը, որ վարած է մինչև 1907–8 թուականները։ Իր եղբօրը՝ Սարգիսի հետ, նոյնպէս Երուսաղէմ ուսած, լուսանկարչութիւն կ'ընէին Կեսարիոյ մէջ երբ 1915 Յուլիս 6ին տարագրուեցան միասին և նահատակուեցան Կէմէրէկի ճամբուն վրայ ի Սամանտէրէ։

ՎԱՀԱՆ (ՏԷՐ ԲԱՐՍԵՂԵԱՆ) ԿԱՐԱՊԵՏ.— Կէրմիրի վարժարանին մէջ պատ. Ստեփան Երլանճեանի տնօրէնութեան շրջանին (1862–1868) Թուրքերէնի դասախօս եղած է այս անձը որ ինքնաշխատութեամբ սորված էր թուրքերէնը։ 1868ին Կիրասոնի և ապա Տարսոնի Ազգային վարժարաններուն մէջ ուսուցչութիւն ընելէ յետոյ առևտրական կը դառնայ, սակայն կ'երևայ թէ չի յաջողիր, վասնզի 1875ին Թալասի վարժարանին տնօրէնութիւնը կ'ստանձնէ (Մանզումէ, թ. 2781)։ Չես գիտեր ի՞նչ եղած է յետոյ։

ՎԱՐԴՈՒԿԵԱՆ ԲԱՐՍԵՂ.— Էվէրէկցի, չափազանց հետաքրքրական դէմք մը, որ 1860ական թուականներուն վերջը կրցած է յաջողիլ Օքսֆորտի համալսարանին աշակերտիլ և 1870ական թուականներուն շրջանաւարտ ըլլալ անկէ, և անցնիլ Ամերիկա, ուր քարոզչութեան պաշտօն վարած է իբր Բողոքական։ 1875ին Ամերիկայէն կը դառնայ Էվէրէկ

իր ծննդավայրը, ուր կը վայելէր քաջ անգլիագէտի, հայագէտի և մեծ հռետորի համբաւ։ 1875-1877 Լաչին-Օղլուի հետ մօտաւորապէս երկու տարի ուսուցիչ եղաւ։ Երեք տղայ ունէր՝ Հայկ, Սիսակ և Արմենակ, ամէնքն ալ Ամերիկա ծնած, և չմկրտուած։ Անոնք կը մկրտէ։ Հայկ՝ 20 տարեկան և Սիսակ 18 տարեկան Թալաս կը գտնուէին։ Մայիսի վերջերը Թէքերէն եկած ատեն փոթորիկ կը պատահի և այն օրը այս երկուքը ձիւնին տակը կը սառին և Դաշպաքըու գիւղին մօտ մեռած կը գտնուին։ Ասոր վրայ Վարդուկեան կ'անցնի Ադանա, հոն ուսուցչական պաշտօն կը վարէ և 1882 Հոկտ.ին Միացեալ Ընկերութեան Կիլիկիոյ շրջանի վարժարանաց տեսչութեան կը կոչուի։ Վարդուկեան իրեն յատուկ գործնական մանկավարժական մեթոտով մը վարած է դպրոցները՝ գրեթէ առանց դասագիրքի, տեսակ մը հին դասական փիլիսոփաներու ճեմարանական դրութեամբ, խաղալով, երգելով ուսուցանելով, առանց մանրամասնութեան մտնելու, ընդհանուր ծանօթութիւններ տալով։ Իր այս մեթոտը գնահատուած է նոյնիսկ Ամերիկայի մէջ, ուր վերջին օրերը մասնաւոր վարժարան բացած էր իր անունով և կը դասախօսէր «Վարդուկեան մեթոտ»ով։ Կ'ըսուի թէ ալքոլամոլութեան զոհ եղած է այս հանճարեղ մարդը, որ կրցած է ուշադրութիւն գրաւել նոյնիսկ օտար շրջանակներու մէջ։

ՎԱՐԴԵՏԵԱՆ ԱՐՏԱՇԷՍ.— Պալակէսէցի. Դ. Էսաեան սան. 1894ին շրջանաւարտ վանքին բարձր. վարժարանէն։ Ըստ իր յանձնառութեան 5 տարի ուսուցչութեան պաշտօն վարելէ յետոյ, Սամսոնի մէջ առեւտուրով զբաղած է։

ՎԻՇԱՊԵԱՆ (իսկական անունով ԵՐԼԱՆՁԵԱՆ) ԳԷՈՐԳ (տես վերը, էջ 1198).— Ծնած է Կեսարիա 1884ին և իր ուսումը առած տեղւոյն Կիւմչեան վրժ.ի մէջ։ Առեւտրական գործով կը մեկնի Իզմիր և կը մտնէ Դաշնակցութեան շարքերուն մէջ։ 1906ին ռումբի պայթման հետեւանքով արտասահման խոյս կու տայ և ի բացակայութեան ցկեանս բանտարկութեան կը դատապարտուի։ 1908ին Սահմանադրութեան հռչակումին Եգիպտոսէն կը դառնայ Կեսարիա և կը կատարէ գործօն դեր հանրային կեանքի մէջ իբր Դաշնակցական պետ, և միեւնոյն ատեն այցելու դասատու կ'ըլլայ Կիւմչեան վարժարանի մէջ։ 15 Յունիս 1915ին կը կախուի, բանտի մէջ նախապէս սարսափելի տանջանքներու ենթարկուելէ յետոյ։



ՏԱԼԱՔԻՒՓԵԱՆ ՅԱԿՈԲ.— Բնիկ Կեսարացի, կրտսերագոյնը տեղւոյն Հնչակեան ուսուցիչներուն։ Եղիազարեան և Պօյաճեան Յովհաննէսներուն հետ կը կազմէին երրորդութիւն մը։ Լաւ խօսող։ Տեղահանութեան ատեն սպանուած։

ՏԱՑԵԱՆ ՏԻԳՐԱՆ.— Ֆէնէսէցի, որդի Տ. Ղեւոնդ քհ.ի։ Իր նախակրթութիւնը ստացած է ծննդավայրին մէջ։ Աշակերտ Սէմիզեանի և պաշտօնակից։ Աշխատութեան մարմնացում։ Մեծ հմտութիւն ձեռք բերած է մանաւանդ ինքնօգնութեամբ։ Մօտաւորապէս 10 տարիէ ի վեր աջ բազուկն էր Սէմիզեանի և եռանդուն գործիչներէն մէկը Ֆէնէսէի Հ. Յ. Դ. կազմին։ 1905ին ուսուցիչ ի Ֆէնէսէ և ապա 1912էն 1915 տնօրէն Ֆէնէսէի վարժարանին ընկերակցութեամբ Ջօրաբ Դավաֆեանի։ Տարագրութեան մէջ 1915ին նահատակուած Ռաս-էլ Այն։

ՏԱՆԺԷ ԺԱՆ (Jean Baptiste Dangée).— Օտարական մը որուն այս շարքին մէջ ներմուծումը իր մասին տրուած տեղեկութիւնները պիտի արդարացնեն։ Ան, ծնած էր 1841 Հոկտ. 11ին Լօրէնի Թիոնվիլ (Thionville) քաղաքը։ Իր նախնական կրթութիւնը ծննդավայրին մէջ աւարտելէ յետոյ, տեղւոյն բարձրագոյն ուսումնարանին մէջ իր ուսումը կը կատարելագործէ յաջողապէս 1861ին։ Յուռն տենչ մը ունենալով ճամբորդելու և մանաւանդ Արեւելքը տեսնելու, երբ կը կարդայ ազդ մը թէ Ֆրանսերէնի դասատու մը կ'ուզուի Պարսից Շահին արքայորդիներուն համար, կը դիմէ պարսից դեսպանին և թեկնածու կը ներկայանայ և կ'ընդունուի և Շահին բժշկապետ Տօքթ. Թոլոզանի հետ կ'երթայ Թէհրան ուր կը մնայ 4 տարի (1861-65) իբր դասախօս Շահզատէկիաններու և աւագանւոյն զաւակներուն։ Այն միջոցին ինքն ալ կ'ուսանի պարսկերէն։ 1865ին Պոլիս կը դառնայ, ուր կը մտնէ Գատը-Գիւղի Collège des Frèresը իբր դասատու և վարիչ։ Հոն կ'առնէ սքեմ, զոր յետոյ կը թողու (Եղիա Տէմիրճիպաշեան, Բիւզանդիոն, թ. 1414)։ 1870ին իր աշակերտին՝ Տօքթ. Յ. Թիրեաքեանի միջնորդութեամբ կը թողու այս պաշտօնը Խասգիւղի Նուպար-Շահնազարեան վրժ.ին մէջ ստանձնելու համար ֆրանսերէն լեզուի դասերը։ 1876ին երբ վարժարանը կը փակուի Արմաշու դպրեվանքը կը հրաւիրուի, Խորէն եպ. Աշըգեանի վանահայրութեան շրջանին և հոն կը դասախօսէ ֆրանսերէն, ընդհ. պատմութիւն և փիլիսոփայութիւն։ Ապա, 1883ին երբ Պոլիս կեդրոնական խնամակալ Հոգաբարձութիւն մը կը կազմուի պոլսեբնակ Թալասցի ազգայիններէ՝ Թալասի ազգային վարժարանը բարեկարգ ու բարգաւաճ վիճակի վերածելու համար, այս խնամակալութեան կազմակերպիչ Տօքթ. Թիրեաքեանի միջոցով, կը ղրկուի Թալաս, իբր ֆրանսերէնի դասախօս, 5 տարուան պայմանագրութեամբ։ 1889ին երբ Վարդ-Պատրիկեանի վարչութիւնը անցաւ Թալասցիներու ձեռքը, Ժան Տանժէի պաշտօնին վերջ տրուեցաւ։ Անիկա կը պատրաստուէր դառնալ Պոլիս, երբ Տրդատ եպ. Պալեան զայն վանք հրաւիրեց։ Ժան Տանժէ աշխատեցաւ մինչև իր մահը՝ 1900 Օգոստ. 19 հոն վարժարանին մէջ և ըստ իր փափաքին, թաղուեցաւ Հայ ծէսով, միաբանութեան գերեզմանատան մէջ գտնուած փոքրիկ մատուռին մէջ։ Այս ֆրանսացին վանքին բարձր. վարժարանին մէջ աշխատած է առանց ամսականի անձնուիրաբար և նոյնիսկ իր անձնական դրամէն վճարած է Հայկ Սեղբոսեանի դպրոցական թոշակը, զայն կոչելով «Միսիւ Տանժէի սան»։ 11 տարիներ դասախօսած է ֆրանսերէն և փիլիսոփայութիւն։ Ինչպէս տեսնուեցաւ 30 տարիներ գործած է Հայոց մէջ և Հայոց համար, և մասնաւորապէս 17 տարիներ Կեսարիոյ Հայոց մէջ։ Տակաւին Նուպար-Շահնազարեան վարժարանը գտնուած ատեն Հայերէն ուսանիլ սկսած է Եղիա Տէմիրճիպաշեանէն (Բիւզանդիոն, թ. 1414)։

Արմաշի մէջ ալ հայերէնը, հինն ու նորն իր ուշադրութեան և զբաղման գլխաւոր առարկան ըրած և իր իմացական կարողութեան բոլոր թափովը մշակած է զայն։ Անխոնջ աշխատութեամբ պատրաստած էր պարսկերէն և հայերէն (հին և նոր) տասնեակ մը անտիպ բառարաններ և բառագիտութիւններ (lexicologie)։ Հեզաբարոյ, անյիշաչար և սակաւապետ անձ մըն էր (Կար. Գ. Քէրթմէնեան, Բիւզանդիոն, թ. 1405, 28 Մայիս 1900)։

ՏԷՎԷԼԵԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ ՊԱՏ. (յետոյ Տ. ՅԱԿՈԲ ՔՀ.) . — Ծնած է Մունճուսուն 18 Նոյեմ. 1823ին։ Աւազանի անունն էր Խաչատուր։ Իր հօր հետ երբ 13 տարու էր գնաց Կ. Պոլիս և աշակերտեցաւ Նարլը Գաբուի վարժարանին մէջ Մալէզեան Յովսէփ պատուելիին և ապա Մայր Եկեղեցւոյ Դպրաց Ուսումնարանին մէջ երաժշտութիւն սորվելով, Մայր Եկեղեցւոյ երաժիշտ ուսուցիչ կը կարգուի, Յակոբոս պատրիարքի ատեն։ Մունճուսունցի Կ. Պոլիս գտնուող երեւելիներու պաշտպանութեամբ 1839 Փետր. 21ին կը մտնէ Սկիւտարի ճեմարանը որ նախորդ տարին բացուած էր։ 1845ին երբ Սէրվէրեան Յովհաննէս Ամիրայի պաշտպանութեամբ Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին մէջ գիշերօթիկ վարժարան կը բացուի, Խաչատուր պատուելի, նոյն Ամիրային կարգադրութեամբ կը ղրկուի այդ դպրոցը, ուր մինչև անոր փակումը (1849), 4 տարի կը մնայ և յետոյ Մունճուսունի մէջ բացուած նոր դպրոցին տնօրէն-դասատու կը կարգուի և կը հասցնէ բաւական կարող աշակերտներ։ 1856 Հոկտ. 28ին Բ. անգամ Կ. Պոլիս կ'երթայ և դարձեալ Սերվէրեան Ամիրայի պաշտպանութեամբ Գուզկունճուգի դպրոցին դասատու կ'ըլլայ։ 1857 Սեպտ. 2էն սկսեալ արքունական շինութեանց մէջ 33 ամիս գրագրութիւն ընելէ յետոյ, 1861 Դեկտ.ին կը դառնայ Մունճուսուն։ 1863 Փետր. 26ին կը վերսկսի դասատուութեան Կեսարիոյ քաղաքին մէջ։ 1866 Յունվ. 13ին Թալաս կը հրաւիրուի, ուր երեք ամիս ուսուցչութիւն ընելէ յետոյ Ս. Դանիէլի Առաջնորդ Ալակէօզեան Կարապետ եպ.էն քահանայ կը ձեռնադրուի Տ. Յակոբ անունով, տեղւոյն Ս. Թորոս եկեղեցւոյն վրայ։ Քաջ հմուտ էր հայերէնի, չափագիտական, բնապատմական, բնագիտական, փիլիսոփայական և այլ գիտութեանց։ Նախանձախնդիր էր դպրոցներու և եկեղեցիներու պայծառութեան։ Բաւական ճարտար քարոզիչ էր և սիրելի եղած իր ժողովուրդին։ Վախճանած է 28 Յունիս 1901ին (Հ. քհ. Տէր-Բարսեղեան, Սուրհանդակ, թ. 732)։

ՏԷՎԷԼԵԱՆ ԿԻՒՐՈՍ.— Թալասցի, թոռն Նախորդին։ Իր նախակրթութիւնը ստացած էր իր ծննդավայրին մէջ և ապա աշակերտած վանքին բարձր. վարժարանին։ Առաջին տարիներուն Թալասի մէջ իբր ուսուցիչ պաշտօնավարած է, յետոյ անցած է Մունճուսուն, որուն համեստ դպրոցը և գիւղին համեստ տղաքը սիրեց և մնաց մինչև տարագրութեան օրերը, երբ թուրք բռնութիւնը զայն ևս շատերուն կարգին քշեց անծանօթ անկիւն մը ու չքացուց։ Եղիազարեան իրեն համար կ'ըսէ թէ «երիտասարդութեան առաջին տարին այնքան ազգասէր, ընկերական այս տղան, վերջերը դարձաւ կատարեալ փիլիսոփայ մը՝ առանձնութեան, լռութեան սիրող»։ Օսմ. Սահմանադրութենէն յետոյ սկսած է հրատարակել խմորատիպ Հայեկ շաբաթաթերթը, որ յետոյ Հ. Յ. Դաշնակցութեան տեղւոյն օրգանը եղաւ։ Կիւրոս Տէվէլեան աշխատակցած է Կ. Պոլսոյ Հայ մամուլին։





ՏԷՐ ԲԱՐՍԵՂԵԱՆ ԲԱՐՍԵՂ. — Ծնած է Թալաս 1883ին, որդին էր տեղւոյն Տ. Հմայեակ քհ.ին և շառաւիղը գերդաստանի մը որ տուած է իր առաւելագոյն տուրքը Հայ մշակոյթին, պարգեւելով Բրոֆ. Յովհ. Յակոբեանը, Տ. Պետրոս Աքհ. և ուրիշներ։ Շրջանաւարտ Նախ Թալասի Ամերիկեան և ապա Ս. Կարապետի բարձրագոյն վարժարաններէն, 1908ին վկայական ստանալէ յետոյ չորս տարի անդադար վարեց ուսուցչապետի պաշտօնը՝ Թալասի Վարդ-Պատրիկեան դպրոցին և ժամանակ մըն ալ Վարի Թաղի վարժարանին։ Գրաբարագէտ։ Հայ լեզուին համար պաշտանք ունեցած է։ Ժամանակ մը հիմնած և խմբագրած է Հայք-Եկ պարբերաթերթը, ընկերակցութեամբ երիտասարդ մտաւորականի մը, Պօղոս Պօղոսեանի (տեղեկ. Ա. Ժամկոչեանի)։ Աշխատակցած է Կ. Պոլսոյ Հայ մամուլին։ Ազատամարտի մէջ «Գանձակ Պենտուսացի» ծածկանունով գրած է շատ մը յօդուածներ։ Ունէր շատ մը ձեռագիրներ, որոնք մեծ եղեռնին նախօրեակին իսպառ կորսուեցան։ Իր զաւկին քով կը մնան միայն կիսահատ մի քանի գործեր, «Բանալի Գործնական Քերականութեան Հայկական Լեզուի» (գրաբար), պատմուածներու հատուկտոր հաւաքածոյ մը, «Հրդեհը» խորագրով, և պատմուածք մը առանձին «Մանճիկին սեւ ճակատագիրը»։ Զինքը մօտէն ճանչցող Ա. Ժամկոչեան իր մասին կը գրէ թէ էր ան «մէկը այն հազուագիւտ քիչերէն, համբերատար ու խղճամիտ դաստիարակներէն ու անբասիր հանրային գործիչներէն որ տարիներ անդադար, առանց փող ու թմբուկի, լուռ, երկիւղածօրէն գիտակից իր սրբազան պարտականութեան սերունդ մը կրթեց ու պատրաստեց, տարուէ տարի քամելով իր ուսուցիչ-դաստիարակի երակները, ի խնդիր սերունդի մը փրկութեան եւ հայեցի դաստիարակութեան։ Ու եթէ անճանաչ մնաց, սեփականութիւնը չդարձաւ խուռներամ բազմութիւններուն, այն ալ իր չափազանց համեստութիւնն էր...։ Բառին լայն առումով ուսուցիչ դաստիարակ մըն էր։ Հմուտ ու բազմակողմանի։ Իր կեանքը նուիրում մը եղաւ իր այնքան սիրած ասպարէզին»։

Տարագրութեան ճամբուն վրայ սուրինահար սպանուած է Պօղազլեանի մէջ։

ՏԷՐ-ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ ԳԱՐԵԳԻՆ.— Ծնած է 1869ին Սեբաստիա։ Նախնական կրթութիւնը ստացած է Ղալաթիա Ամենափրկչեան վարժարանը Ստեփան Փափազեանի տնօրէնութեան օրով։ 1886ին մտած է Կեդրոնական վարժարան, որուն անդրանիկ շրջանաւարտներէն մին էր։ 1 Սեպտ. 1891ին իբր գիտութեանց ուսուցիչ Ս. Կարապետի բարձ. վարժարանի մէջ պաշտօնի կոչուեցաւ։ 1894ին գնաց Ֆրանսա և Նանսիի համալսարանը մտաւ։ 1899ին Կ. Պոլիս կու գայ իբր բժիշկ վկայուելով, սակայն յետոյ կը դառնայ կրկին Ֆրանսա ուր կը հաստատուի ի Saint Blin (Haute Marne) և կ'զբաղի բժշկութեամբ. 1925ին կ'ընտրուի տեղւոյն քաղաքապետ։

ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ՅԱԿՈԲ ՔՀ.— *Որդի Զօմախլուի Մեծ Տ. Կարապետ քհ.ի, որուն կողմէ ուսուցիչ կը կարգուի Վարի Թաղին տղոց իր եղբօր Յովհանի հետ և մինչև* 1885 *դասատուութիւնը շարունակելէ յետոյ քահանայ կը ձեռնադրուի և իր ծննդավայրին եկեղեցիին մօտ շինել կու տայ դպրատուն մը, այս կերպով ալ սատարելով կրթական գործին։*

ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ՅՈՎՀԱՆ (*յետոյ* Եղիա վրդ.).— *Եղբայր Նախորդին և անոր պէս իր հօրմէն ուսուցիչ կարգուած Վարի Թաղին մանուկներուն՝ իր եղբօրը հետ։ Կ'ուսուցանէր գրել-կարդալ և հաշիւ, նաև տիրացուութիւն, Շարական, Սաղմոս, Աւետարան, գրաբար քերականութիւն և գրաբարէ թուրքերէն թարգմանութիւն։ Յետոյ մտած է կուսակրօն եկեղեցականութեան ասպարէզ իբր միաբան Թոմարզայի վանքին։*

ՏԷՐ-ՄԱՐԳԱՐԵԱՆ *կամ* ԿԻՇԻԼԻԿԵՆՑ ԽԱԴ ՎՐԴ.— *Աշխարհական անունը կ'անգիտանան թէ Յ. Արզումանեան և թէ Գ. Թագւորեան։ Իր աշխարհականութեան Ֆէնէսէի մէջ պաշտօնավարած է իբր ուսուցիչ։ Հաւանօրէն բնիկ Ֆէնէսէցի և տեղւոյն վրայ կրթութիւն առած, օգնական-ուսուցիչի պաշտօն կը վարէ իր ծննդավայրին մէջ Համբարձում Ամատունիի տնօրէնութեան շրջանին։* 1892*ին Ամատունիի հետ կը հեռացուի կառավարութեան կողմէ։ Ազատ արձակուելէն յետոյ Պոլիս կու գայ։* 1896*ին ձեռնադրուած է Իզմիրլեան պատրիարքէ վարդապետ, և քիչ յետոյ գացած է Ամերիկա ուր մինչև* 1902 *վարելէ յետոյ Նիւ-Եորքի և Բրովիտէնսի հովուութիւնները, եղած է կարգաթող։*

ՏԷՐ-ՄԱՐԿՈՍԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (*մականուանեալն* Վարժապետ).— *Ծնած է Զօմախլու* 1858*ին։ Որդին էր Զօմախլուի Վերի Թաղին Ս. Թորոս եկեղեցւոյն Տ. Մարկոս քհ.ին որ Ս. Կարապետ վանքին մէջ ուսում առած և իր ծննդավայրին առաջին ուսուցիչն եղած էր։ Կարապետ կը ներկայացնէր հնօրեայ պատուելիներու տիպարը։ Իր աշակերտը Արիս Գալֆայեան կ'ըսէ.* «Ամէն նորեկ աշակերտ մը առնուազն երկու տարի կը կարդար տախտակը, մեծ ակիշի այիի ձեւով տաշուած փայտի կտոր մը, որուն վրայ փակցուած կ'ըլլար «այբբեն»ը նախշուն, երկաթագիր: Հոգեկան տախտակ, որմէ նախ կարդալ սորվեցանք «այբէն քէ», հորիզոնական, յետոյ ուղղաձիգ «այբ-խէ-գա», ամէնէն ետքը «քէ-փիւր-յիւն» հակառակ կողմէն: Երբեմն ձեւով ընթերցում երկու տարուան մէջ, ,ինչ ուսում չէ: Տախտակին կը յաջորդէր Քերականը, որուն «այբ-բեն»ը կը վերջանար «ինի-մէնիմ, Աստուած իմ»...: Յետոյ կարգը կուգար «Հեզարան»ին (Հինգնէ), Սաղմոսի Ա. կանոնն էր այս գրքոյկը, ուղիղ գծերով անջատուած վանկերով: Երբ աշակերտը հասնէր երկրորդ դասի «խը-զիս-զուք»ը՝ վարժապետը կը բռնէր անոր օձիքէն եւ վերէն վար կը խզզէր, կը նշանակէր թէ այլեւս այս աշակերտին լեզուի կապանքները խզզուած են: «Խզզեցուք»ին ամէն աշակերտ պարտաւոր էր բացառիկ նուէր մը տանիլ վարժապետին՝ սեր, պանիր, մեղր, մածուն, աքլոր, զառնուկ, կամ դրամական գումար մը: Հինգնէէն վերջ դասընթացքներն էին՝ թուաբանութիւն, պզտիկ Սաղմոս, մեծ Սաղմոս, եւ վերջապէս լրացուցիչ դասընթացք Աւետարանին երկու գլուխ բառացի թարգմանութիւն թուրքերէնի: ... Աշակերտներու առտու իրկուն պարտադրուած էին *ժամ երթալ*, ուր մէջ թերացող տղան իբր *անմիտ* արժանի էր պատուհասի: Առտուան ժամէն ետք կը թխմուէինք դպրատունը եւ յոտնկայս գրաբար աղօթք մը երգելէ յետոյ մինչեւ ճաշաժամ կը զբաղուէինք սերտողութեամբ: ... Գիրքերու վրայ կռացած լուռ ու մունջ կը քաղէինք դասերնիս, *ղալֆա*ները իրենց *թէնգիլ*ը կ'ընէին, իսկ վարժապետը ձեռքը քանակ մը բռնած կամ դպրատունին երկայնքը կը չափչփէր տոտիկ տոտիկ, մերթ քթին տակէն մի քիչ երգ կամ շարական մռմռալով, տուն կու տար *ապրցուի* թակերուն, եւ կամ երբ ձանձրանար շրջան ընելէ կ'ընկողմանէր բարձին վրայ անկիւն մը լայն լայն յօրանջելով ակռան կ'սկէր: Հուսկ ուրեմն գրպանէն կը հանէր ափով կուտ կամ ընկոյզ ճթռտացնելով կ'ուտէր մինչեւ որ քունը տանէր ու խորթար: ... Նախաճաշէն մինչեւ կէսօր վարժապետը քիչ անգամ դպրատուն կ'այցելէր, այդ պահուն կամ անիկա գիւղապետին գացած կ'ըլլար մուրհակ գրել, կամ պանդուխտ ամուսին ունեցող տիկիններու մօտ՝ նամակ գրել: Վարժապետին աշխատանքին պահն էր ընդհանրապէս կէսօրէն ետք մինչեւ իրիկուայ ժամերգութիւն, 2-3 ժամ: Եւ այդ միջոցին անիկա հազիւ կը հասնէր *ղալֆա*ներու *զարպ*ին եւ *սէնէտ*ին: ... Դասերը կը նայէին *ղալֆա*ները: ... Վարժապետը... ընկերական մարդ [illegible] ներկայութիւնը կարծես անհրաժեշտ էր խնջոյքներու, հարսնիքի, կնունքի եւ հաւաքոյթներու մէջ: Ամենուն մարդն էր ան, իւրաքանչիւրի ակնկալութեան համաձայն կը շռայլէր հանաքն ու ժպիտը: Վարժապետը գեղջուկ աշխատանքը երբեք չէր արհամարհեր, ամրան հասարակ բանուորի մը նման: Վարժապետի մեծագոյն հմայքն էր իր կրակարանը: Իսկապէս վարժապետին *օջախ*ը գիւղին մէջ բացառիկ մոգական հմայք մը ունէր: Մութ դահլիճէ մը ներս, մէկ ոտք բարձրութեամբ սագու մը, որուն աջ դին կանգնած կը մխար կամարակապ ծխնելոյզը կամ կրակարանը, հրաշող ատրուշան, որուն շուրջը կը վճռուէին հրատապ հարցեր: «Ծերոց ժողովարան եւ մարդկանց քաւարան»:

*Այս ամենուն սիրելի վարժապետը հայաջինջ սարսափի օրերուն տարագրուեցաւ Արաբիա և մեռաւ Հավրանի անապատները։*

ՏԷՐ-ՄԱՐԿՈՍԵԱՆ ՄԱՐԿՈՍ (*մականուանեալ* ԷՖԷՆՏԻՆ *իր գիւղին մէջ, իսկ* ԹՕՓԱԼ ՄԱՐԿՈՍ *'ի Կեսարիա*).— *Ծնած էր Զօմախլու։ Միամօր որդին էր վերոյիշեալ «Վարժապետ»ին, որուն սեփական տիտղոսը մնացած էր* Էֆէնտին: *Անիկա, մանուկ հասակին մէջ քիչ մը չար և չփացած ըլլալով «Վարժապետ»ը զայն մեծ-մարդ ընելու նախանձախնդրութեամբ, յաճախ կը ծեծէր իր տղան, որ կորսնցուց իր աչքերուն ուժը։ Նոյնպէս իրեն ընկերներէն հալածուած խաղի մէջ, ինքզինքն վար կը նետէ աղբիւրին կամարէն և կը փասուի ու կաղ կը մնայ։ Զօմախլուի մէջ քիչ մը ուսում առնելէ յետոյ կը ղրկուի Թոմարզայի վանքը, ուր իր ուսումը շարունակելէն յետոյ կու գայ իր հօրը աթոռը գրաւել իբր վարժապետ։ Ա. Գալֆայեան՝ այն ատեն աշակերտ Զօմախլուի վարժարանին, կը նկարագրէ անոր փառաւոր մուտքը դպրատուն, երբ տակաւին անպեխ և անմօրուս պատանի մըն էր։ Ան օր մը կու գար դպրոց «Վարժապետ»ին առաջնորդութեամբ և*



*Տ. Ներսէս հօր և գիւղի աւագանոյն ընկերակցութեամբ։ Աշակերտները յոտնկայս կ'ողջունեն զինքը։ Իրենց մէջ Էֆէնտիէն տարեց տղաք կային, սակայն անոնք ալ ամենայն երկիւղածութեամբ բարեւի կեցած էին։ Էֆէնտին իր շքախումբէն կը բաժնուի, յուշիկ յուշիկ բեմ կը բարձրանայ և կը գրաւէ հօրը աթոռը։ Աշակերտ, քահա-*

նայ, աւագանի և վարժապետ ատքի, Էֆէնտին կը բազմի աթոռին վրայ։ Որմէ ետք Վարժապետը պատկառանքով կը խոնարհի տղուն և կը յանձնէ անոր ուսուցչական աւանդական քանակը։ Մեռելային լռութի՛ւն, որուն կը յաջորդէ որոտընդոստ ծափահարութիւն մը։

Իր պաշտօնավարութեամբ կրթական գործը կը մտնէ նոր ճամբու մը մէջ։ Շուտով դպրոցին վարկը բարձրացաւ, համբաւը տարածուեցաւ շրջականերու մէջ, և Ինճէ-սուէն, Գարաճէօրէնէն. և Վարի Թաղէն սկսան յաճախել Վերի Թաղին դպրոցը։ Հին գիրքերու յաջորդեց Ընթերցարան, Նարպէյի Քրիստոնէական, և Դարագաշեանի Քերականութիւն: Թուրքերէնի և թուաբանութեան ուժ տրուեցաւ։ Էֆէնտին պատկառանք կը ներշնչէր։ Միայն արհամարհանք ունէր հանդէպ գիւղական կեանքին և հողային աշխատանքին։ Մարկոս Տ. Մարկոսեան որ գիտէր լաւ հայերէն, թուրքերէն, անգլիերէն և ֆրանսերէն, նաև հայկական և եւրոպական ձայնագրութիւն, երկու տարի Էվէրէկ, հինգ տարի Կեսարիա (Միացեալ Ուսումնարան 1903-4 և Ս. Կարապետի բարձր, վարժարան) և տարի մը Պրուսա պաշտօն վարելէ յետոյ դարձաւ Զօմախլու և մինչև 1915ի տեղահանութիւնը դասախօսեց Զօմախլուի Վերի Թաղի Կրթասիրաց վարժարանին մէջ արդիւնաւոր կերպով։ Մարկոս Տ. Մարկոսեան 1915ին մեռաւ բանտին մէջ։



ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ ԴԱՒԻԹ.— Ծնած է 23 Նոյեմ. 1864 ի Կէրմիր, ուր առած է իր նախնական կրթութիւնը՝ Պարթեւեան վարժարանի փայլուն շրջանին, երբ այդ հաստատութիւնը կը հասցնէր կրթական մշակներ, որոնք, Կեսարիոյ, Եօզկաթի և այլ մերձաւոր շրջանակներու մէջ ուսուցչութիւն ընելով բազմաթիւ կրթական վառարաններ հիմնած և զարգացուցած են։ Դաւիթ Տէր-Մովսէսեան աշակերտած է մասնաւորապէս Աբրահամ Տէր-Աբրահամեանի որ վերջէն Եօզկաթ հրաւիրուելով հոն կազմակերպած է կրթական գործը։ Վարժարանին շրջանը աւարտելէն վերջ ընկերներուն հետ միասին մինչև 1883 օգնական ուսուցչութեամբ զբաղած է։ Պզտիկ տարիքէն մօրմէն որբ մնացած՝ ազգականներուն տուները ապրած էր։ 1883 Յունիս 15ին այս պատճառով կը պարտաւորուի Գըրշէհիր տեղափոխուիլ, հոն գտնուող հօրեղբօրը քով բնակելու համար։ Հոն Դաւիթ Տ. Մովսէսեան կը բանայ մասնաւոր վարժարան մը որ 2 տարի (1983-85) կեանք կ'ունենայ։ Ուսման փափաքը հետզհետէ աւելի արծարծուելով իր մէջ կու գայ 4 Յուլիս 1885ին Պոլիս հօրը քով, բարձրագոյն վարժարան մը մտնելու փափաքով և արդարև տարի մը աշխատելէ յետոյ 1886 Նոյեմ. 5ին մտից քննութեամբ կ'ընդունուի իրաւաբանական վարժարանի Ա. կարգը։ Տարի մը վերջ քննութեամբ Բ. կարգին



երրորդ աշակերտն էր։ Եւ այս չափազանց դժուար պայմաններու մէջ, վասնզի օտար միջավայրի մէջ առանց պաշտպան մը ունենալու պարտաւորուած էր ուսման հետեւած ատեն իր օրապահիկն ալ հոգալու և ասոր համար կ'աշխատէր փաստաբանի մը գրասենեակին մէջ։ Այսպէս անխոնջ աշխատութեամբ աւարտեց իր ուսման շրջանը և ստացաւ փաստաբանութեան վկայական և մերժելով դատական նախարարութեան առաջարկած պաշտօնը 1892ին գրասենեակ մը բացաւ որ շարունակեց մինչև 1923 երբ ձգելով Պոլիսը հաստատուեցաւ Վիեննա ուր կը մնայ ցարդ։ Դաւիթ Տ. Մովսէսեան, մինչև 1908, Օսմ. Սահմանադրութեան հռչակումը հեռու մնացած էր հանրային-հասարակական գործունէութենէ, սահմանափակուելով սոսկ իր գործին մէջ ուր ունէր շահած գեղեցիկ համբաւ մը իբր ուղղամիտ և կորովի փաստաբան մը։ Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ խառնուեցաւ ազգ. կեանքի և հոն կատարեց շատ կարեւոր դեր մը։ 1908ին Ազգ. երեսփոխան ընտրուեցաւ Դուժ-Գաբուի թաղէն և մինչև վերջը պահեց իր աթոռը նոյն ժողովին մէջ ուր ինքն կատարեց նշանակելի դեր, իբր պետը՝ իր իսկ կազմակերպած կեդրոնի խմբակցութեան որ կը ներկայացնէր ժողովին մեծամասնութիւնը։ Դաշնակցութեան մենատիրական ձեռնարկներուն կորովի հակառակորդ մը եղած է և յաջողած՝ անոնց բազմաթիւ ազգավնաս ձեռնարկներուն թումբ կանգնիլ։ Այս ըմբռնումով անշուշտ յարած է Ռամկ. կուսակցութեան, և նոյնիսկ 1912ին ձեռնարկած է հիմնելու Լուսարձակ անուն լրագիր մը որ կարճ ժամանակ մը հրատարակուած է իր վարչութեամբ։ Զինադադարէն յետոյ նոյնքան եռանդով աշխատեցաւ։ Հակառակ վարչական ժողովներու մասնակցելու իր խորշումին, 1921ին Քաղ. ժողովը կազմելու համար իրեն եղած առաջարկը ընդունեց պայման դնելով որ իր ընկերները ինքն ընտրէ։ Ընդհ. ժողովը այս առաջարկը ընդունած ըլլալով առաջին անգամ ինքն այսպիսի բացառիկ վարչութիւն մը կազմեց, ինչ որ յետոյ շարունակուեցաւ։

1923ին Վիեննա քաշուելէն յետոյ ինքզինքն նուիրած է ընկերաբանական ուսումնասիրութեանց, որոնց մէջ խորանալու համար անհրաժեշտ նկատելով նաև գերմաներէնի ծանօթութիւնը, կ'ուսանի նաև այդ լեզուն։ Իր ուսումնասիրութիւնները զինքն հասուցած ըլլալով այն եզրակացութեան թէ Հայ ժողովուրդին մատնուած դժնդակ կացութեան դարմանը թրքահայութեան ցանուցիր մնացորդներուն Հայաստան փոխադրութիւնն է, հոն մասնակցելու համար սկսուած շատ յուսալից աշխատութեանց, իր այդ տեսութիւնը հանրութեան ևս պարզելու համար անցեալ տարի հրատարակեց Գաղութահայութեան համար ելից միակ ազդակը անուն հատորը։

ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ. — Թոմարզացի, աշակերտ Կարապետ Վրդ.ի։ Երկար ատեն ուսուցչական պաշտօն վարած է Զօմախլու։ 1911ին Թալասի Վարդ-Պատրիկեան վարժարանի դասատու և երաժիշտն էր։ 1912-15 Ինճէսուի դպրոցին միակ ուսուցիչն էր։ Տարագրուած։ Վերապրող։ Այժմ Սուրիա։

ՏԷՐ-ՍՏԵՓԱՆԵԱՆ (կամ ԱՒԵՏԻՔԵԱՆ) ՆԵՐՍԷՍ. — Նիրզէցի, և որդի տեղւոյն Տ. Ստեփան Քհ.ին. աւագանի անունով Զաքարիա, որ յետոյ



*Տրդատ եպ. փոխած է Ներսէսի։ 1888ին մտած է վանքին բարձր. վարժարանը իբր կիսաթոշակ։ 1893ին գիտական առաջին կարգի վկայական ստացած է և իբր օգնական ուսուցիչ պաշտօնի կոչուած 1894ին և կեդրոնականցիներուն հեռանալէն յետոյ՝ ուսողութեան և բնական գիտութեանց դասերը ինքն աւանդած է 22 տարի շարունակ։ 1912էն առաջ պահ մը դադրած է և այդ թուականէն յետոյ վերակոչուած է։ 1915ին տարագրութեան ճամբուն վրայ նահատակուած ի Սաման-Տէրէ (Կէմէրէկ)։*

ՏԷՕՔՄԷՃԵԱՆ (*կամ* ՓԱՓԱԶԵԱՆ) ԱՆԴԻՆԷ (ՕՐ). — *Կ. Պոլսոյ Դպրոցասէր Տիկնանց վարժարանէն շրջանաւարտ վկայեալ ուսուցչուհի մը, որ 1914-15 դպրոցական տարւոյն բերուած է Կեսարիա, Արամեան վարժարանի մէջ պաշտօնավարելու համար։ Իր աշակերտուհիներու սէրը և համակրանքը գրաւած ուսուցչուհի մը որ տարագրուեցաւ Րէս-իւլ-Այն։ Հրաշքով վերապրող։ Յետոյ Իսկէնտէրուն հաստատուած։ Հիմա Սուրիա։*

ՏԻԼՍԻԶԵԱՆ ՊԵՏՐՈՍ.— *Բնիկ Կեսարացի, և ամենայաջող սաներէն մին՝ Կիւմիւշեան վրժ.ի որուն շրջանը աւարտած է 1896ին և հոն այդ վարժարանին մէջ նախ իբր ուսուցիչ և վերջերը իբր տնօրէն-ուսուցիչ պաշտօնավարած է մինչև 1909։ Յետոյ անցած է Գըրշէհիր որուն Թուրք Իտատի վարժարանին մէջ ֆրանսերէնի ուսուցիչ կարգուած է։ Խողխողուած է Գըրշէհիրի սպանդին։ Հայ վարժարաններուն մէջ դասախօսած է ֆրանսերէն և գիտական դասեր։ Բայց հմուտ էր նաև հայերէնի և թուրքերէնի։*

ՏԻՄԱՆԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ. — *Կէմիրի Պարթևեան վարժարանի համբաւին գործաւորներէն մին է այս անգլիերէնի և ուսողական գիտութեանց և աշխարհագրութեան հմուտ ուսուցիչը որ միայն երկու տարի Կէմիր մնացած է և սակայն այդ կարճ շրջանին մէջ շատ մը աշակերտներ հասուցած։*

ՏՕՆԻԿԵԱՆ ՍԱՐԳԻՍ.— *Ծնած է 1863ին Եվէրէկ։ Իր խորթ հայրն էր ուսուցիչ Դաւիթ Զօմագլուեան (տես այս անունը)։ Տօնիկեան եղած է Երուանդ Երկաթի առաջին և ամենափայլուն աշակերտներէն մին։ Ունեցած է արկածալից կեանք մը։ Հազիւ 1880ական թուականներուն դպրոցը աւարտած կ'անցնի Իզմիր և գրագիր կ'ըլլայ Պալեօզեաններու քով։ Կ'ըսուի թէ զեղծումի մը հետեւանքով ճամբուած կը դառնայ Եվէրէկ և կ'ըլլայ ուսուցիչ (1890-93)։ 1893ին կ'ստանձնէ Ֆէնէսէի վարժարանին տնօրէնութիւնը որ կը վարէ չորս տարի, այսինքն մինչև 1897։ Գ. Թագւորեան կ'ըսէ թէ* «ուսուցչութեան հետ կապակցութիւն չունեցող, սակայն ընդունակ եւ ինքնաշխատութեան հակամիտութիւնով տոգորուած երիտասարդ մըն էր ան: Քիչ ժամանակէն կը յաջողի իւրացնել գործին նրբութիւնները եւ մասնաւոր ուղղութիւն մը տալ կրթութեան: Տօնիկեան... առհասարակ օգտակար եղած է իր սիսթեմաթիկ եւ նուազ աւանդամոլ ուղղութեամբ» (*տես նաև վերը էջ* 1172)։ *Ֆէնէսէէն հրաժա-*



*րելէ յետոյ երկու տարի Տարսոն և տարի մը՝ Եօզկատ ուսուցչութիւն կ'ընէ և ապա 1905ին կ'ստանձնէ Եվէրէկի Ազգ. վարժարանին տնօրէնութիւնը։* «Իր առինքնող արտայայտութեամբ հեզահեզ կը գրաւէ ժողովուրդը եւ կը դառնայ Եվէրէկի ականաւոր գործիչներէն մին: Կը բանայ լսարան եւ Եվէրէկի վարժարանը կը դնէ օրինակելի գետնի վրայ» (*Եղիազարեան*)։

1905ին *կառավարական պահանջումով (տես վերը էջ* 1175) *կը պարտաւորուի թողուլ Եվէրէկը Եօզղատ մեկնելու համար, սակայն Տրդատ եպ. Պալեան զայն Կեսարիոյ մէջ պահելու կը յաջողի։ Հոն Կիւմիւշեան վարժարանի մէջ քանի մը տարի դասատուութիւն կ'ընէ։ Յետոյ կրկին կը դառնայ Եվէրէկ, և կ'ըլլայ տնօրէն-ուսուցիչ Ռուբինեան վարժարանին։*

«Իբր ուսուցիչ բեղմնաւոր կեանք ունեցած է, հասցնելով Սեդրաք Գարակէօզեանի պէս աշակերտներ, եւ սակայն պատերազմի ընթացքին իր կատարած ապերասան մատնութիւնները իր ճակտին դրոշմած են արատ մը որ ոեւէ արդարացումով չի կրնար սրբուիլ երբեք: Կ'ըսեն թէ նոյնիսկ իր ձեռքով խողխողած է Հայեր իր հաւատարմութիւնը գործնապէս ապացուցանելու համար: Մենք չենք հաւատար այս աստիճան հրէշութեան: Միայն հաւատացած ենք թէ առանց ճնշումի եւ բացարձակ ինքնակամութեամբ իր գաւառի ընկեր Գայմագամ Ջէքիի արիւնաքամ ճանկերուն յանձնած է Եվէրէկի եւ Ֆէնէսէի ծաղիկ երիտասարդները, իրեն հաւատարիմ գործակից ունենալով Կիւլպէնկ Պետրոսեան անուն ուսուցչի թափթփուք մը եւս» (*Եղիազարեան*)։

*Լեզուանի, անուշ լեզու, օձի բերան, ձայնաւոր, կեղծ յեղափոխական եղած է, Հնչակեան, Դաշնակցական, ամէն ինչ։ Կ'ըսուի թէ հիմա խոլամացած և փալթթոցաւոր միւէզզին, կ'ապրի Եվէրէկ։ Կարողութիւն մը՝ բայց անկեալ նկարագիր։*

ՔԵԱԹԻՊԵԱՆ ԼԵՒՈՆ.— *Էտիրնէցի, 1891ին վանքին բարձր. վարժարանին իբր անգլիերէնի և տնտեսագիտութեան ուսուցիչ կուգայ Կ. Պոլիսէն Կեսարիա, և մի քանի տարի պաշտօն կը վարէ։*

ՔԷՇԻՇԵԱՆ ԱՆՈՅՇ (Օր.). — *Ուսուցչուհի Արամեան վարժարանի։ Տեղահանութեան ատեն կը նետուի Հօրան։ Դամասկոսի մէջ ամուսնացած է Տիարպէքիրցի դերձակ Յովհ. Մանուկեանի հետ, որ զինուորագրուած և սպանուած է։*

ՔԻՐԹՄԷՆԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ.— *Ծնած է Թալաս 1870ին։ Կէմիրի դպրոցին փայլուն շրջանին աշակերտներէն մին, որ չբաւականանալով իր ստացած ուսումով գացած է Վենետիկ, իր ուսումը շարունակելու համար և հմտացած է հայերէն և իտալերէն լեզուներուն։ Մասնակցած է Փոքր Հայքի շարժումին և Գաղատիոյ պատերազմական ատեանէն մահուան դատապարտուած* (1893)։ *Դատավարութեան ատեն խօսած է բուռն պաշտպանողական մը (տես* Գաղատիոյ դատավարութիւնը, *էջ* 57-67)։ *Կէմիրի դպրոցին կրտսեր աշակերտներէն սակայն մին անոնց հմտագոյններէն և ամէնէն համեստը։ Երկար տարիներ ծառայած է իր ծննդավայրին՝ Վերի Թաղին վարժարաններուն մէջ դասախօսելով և քանի մը տարի ալ Կեսարիա և մնացեալ կեանքին ընթացքին, զանազան շրջաններ պաշտօն վարած է դասախօսելով թէ՛ հայերէն թէ՛ ֆրանսերէն և թէ՛ թուրքերէն լեզուները և թէ՛ գիտութիւնները։ Մշակած է բանասիրութիւնը և ունի հմտալից գրուածներ* Բազմավէպ*երու մէջ։ Կը կարծուի թէ մեծ եղեռնին զոհ եղած է։*

ՔԷՐԹՄԷՆԵԱՆ ՍԱՐԳԻՍ. Պատուելի, Թալասցի. 45 տարի (1860-1905) պաշտօնավարած է Թալասի Վերի Թաղի Վարդ-Պատրիկեան աղջիկներու վարժարանին մէջ: 1905էն սկսեալ հանգստեան կոչուած է, մէկ ոսկի ամսականով:

ՔԷՕԼԷԵԱՆ ԼՈՒՍԻԿ (Տիկ.) (Ծնեալ ՀԱՆԷՍԵԱՆ). — Ծնած է 1879ին Եվէրէկ: Իր նախակրթութիւնը ստացած է Կ. Պոլսոյ Կէտիկ փաշայի Ազգ. վարժարանին և իր երկրորդական ուսումը՝ Դպրոցասէր Տիկնանց վարժուհինոցին մէջ: Հարսնացած է Եվէրէկի ամէնէն ծանօթ ընտանիքներէն մէկէն՝ Պր. Ալիքսան Քէօլէեանի: Ամուսնոյն կանխահաս մահուան հետեւանօք իր մանկահասակ հինգ զաւակներուն ապրուստը ապահովելու համար 1901ին կը մտնէ ուսուցչական ասպարէզ և մինչև 1915 իբրև տնօրէնուհի կը պաշտօնավարէ Եվէրէկի Մեսրոպեան և Ֆէնէսէի Ռուբինեան աղջիկներու վարժարաններուն մէջ՝ բոլորովին արդիականացնելով զանոնք: Հասուցած է հարիւրաւոր աշակերտուհիներ, որոնց մեծ մասը դժբախտաբար հայաջինջ սարսափին զոհ գացած են: 1915ին տարագրութեան ատեն Թուրք կառավարութիւնը իբր արհեստաւոր միայն հինգ ընտանիք ազատ կը կացուցանէ աքսորէ: Անոնցմէ մէկն էր Տիկ. Քէօլէեան, որ իբր կար ու ձեւի և ձեռագործի մասնագէտ Թուրք աղջիկներու վարժարանի ուսուցչուհի կը կարգուի: Ցորեկը դպրոցին մէջ, իսկ գիշերը ձրիաբար Թուրք հանըմներու հագուստ կարելով, Փիզիքապէս կը տուժէ: Յետոյ Կեսարիոյ միւթէսարըֆը Եվէրէկ գալով զինքը կը նշանակէ վարիչ-տնօրէն Եվէրէկի և Ֆէնէսէի զոյգ հիւսուածեղէնի պետական աշխատանոցներուն, որոնք հիմնուած էին Թուրք և քիւրտ գաղթական կիներու գործ հայթայթելու համար: Անոնց արտադրութիւնը ամբողջութեամբ կը յատկացուէր բանակին: Այս հաստատութիւններու մէջ գործելու իրաւունք ունէին միայն Թուրք և քիւրտ կիներ, սակայն իր ճարտարութեամբ մեծ թիւով Հայ զինուորներու ընտանիքներու չքաւոր կիները և աղջիկները կը տեղաւորէ նաև և ապրուստ կը հայթայթէ անոնց: Իր պաշտօնին բերմամբ ունեցած ծանօթութիւնները օգտագործած է Հայ ընտանիքները պաշտպանելու և շատերը՝ ստոյգ մահէ փրկած: 1918ի սկիզբը միւթէսարըֆը տեսնելով Եվէրէկի աշխատանոցներուն աւելի յաջող վիճակը բաղդատմամբ Կեսարիայիններուն, զանոնք կը փոխադրէ հոն և անոնց կը միացնէ Որբանոցը, և տնօրէն կը կարգէ Տիկ. Քէօլէեանը, որ մինչև Զինադադար կը պաշտօնավարէ, կարելիութեան սահմանի մէջ օգտակար ըլլալով իր հսկողութեան ենթակայ Հայ կիներու և որբ աղջիկներու: Քէմալական պատերազմներու և նոր տարագրութեանց շրջանին, 1919-22, երեք տարի կը պաշտօնավարէ Իրէճլիի և Գոնիայի վերաբացուած Ազգ. վարժարաններու մէջ տնօրէնութեան պաշտօնով և Իզմիրի շրջակայքէն աքսորեալներուն մեծապէս օգտակար կ'ըլլայ: 1923ին կ'երթայ Ամերիկա իր զաւակներուն քով: Հոն ևս ընկերային ծառայութեան կը նուիրուի, հիմնադիրը դառնալով Նիւ-Եորքի Հայ Ընկերային Ծառայութեան մարմնոյն և Ֆինանսական Յանձնախումբին նախագահ, ինչպէս նաև հիմնադիրը և անխոնջ աշխատողը հանդիսանալով Նիւ-Եորքի Ս. Խաչ եկեղեցւոյ Եկեղեցասէր Տիկնանց Միութեան: Անդամ է նաև Պոլսահայ Միութեան:





ՔԷՕԼԷԵԱՆ ԽՈՐԷՆ.— Ծնած է Թալաս: Իր իսկական անունն էր Կարապետ, որ Տրդատ եպ. փոխած էր Խորէնի: Անդրանիկ շրջանաւարտներէն մին Ս. Կարապետի բարձր. վարժարանին (1893): Եղած է սուսիկ-բուսիկ ու յարատև աշխատող մը: 1894էն սկսեալ իբր տնօրէն-դասատու պաշտօնավարած է Թալասի Վերի և Վարի Թաղի վարժարանները դասախօսելով գրեթէ ամէն նիւթերու վրայ: Գրաբարի ուսուցիչ եղած է Թալասու Ամերիկեան Գոլէճին մէջ: Նահատակուած է տարագրութեան ճամբուն վրայ 'ի Սաման Տէրէսի (Կէմէրէկի մօտ):

ՔԻՒՐՔՃԵԱՆ ՎԱՀԱՆ.— Ծնած է 1873ին Նիրզէ գիւղը, անդրանիկ զաւակն էր արհեստով հիւսն Սարգիս անուն անձի մը, և մկրտուած է Կարապետ անունով: Իր անունը յետոյ Տրդատ եպ. Պալեան փոխած է Վահանի: Ան հանդարտ, բարի և ազնիւ ձիրքերով օժտուած մանուկ՝ սիրելի եղած է գիւղին Ս. Ներսէսեան վարժարանի ուսուցիչ Ֆէնէսէցի Սրապիոն Գալֆայեանի, այնպէս որ երբ 1888ին Տրդատ եպ. Ս. Կարապետի վանքին մէջ, բացուելիք Ժառանգաւորաց վարժարանին համար ուսանողներ կ'ուզէ, անիկա գիւղին քահանային որդւոյն Զաքարիային դէմ (յետոյ Ներսէս) ասոր ընտրելիութիւնը կը պաշտպանէ և կը յաջողի ու քահանան 9 Մայիս 1888ին զայն կը բերէ Տրդատ եպ. Պալեանի ըսելով «բոլոր աշակերտներէն յաջողագոյնը կը բերեմ»: Արդարև Քիւրքճեան կը հանդիսանայ իր դասարանին ամէնէն ուշադրաւ աշակերտը: 1890ին ինքն կը կազմակերպէ «Գրական Միութիւն»ը, որ կը կառավարուէր աշակերտներու կողմէն, ինչպէս տեսնուեցաւ (տես էջ 1141-3): Ինք կ'ըլլայ անոր առաջին Ատենապետը և իր լուրջ բնաւորութեամբ կ'ունենայ մեծ հեղինակութիւն դպրոցին մէջ ցոյց տալով կառավարելու ընդոծին ձիրք մը.



1893ին Ս. Կարապետի վարժարանը կու տար իր առաջին հունձքը, հինգ շրջանաւարտներ(1), որոնց առաջինն էր Վահան Քիւրքճեան, որ անմիջապէս Կեսարիոյ Հայկեան վարժարանին մէջ ուսուցչական

---

(1) Այս կարգին դասակից եղած են սակայն կիսաւարտ, Արամ Մոստիչեան(†), Արշակ Օտապաշեան (այժմ Դահիրէ, վաճառական), Մանուկ (Տաճատ) Փաթամանեան, և Կէրմիրցի Բարունակ Դաւիթեան(†):

*պաշտօն կ'ստանձնէ* (1893)*, և շուտով համբաւ կը շահի իր ուսուցանելու մեթոտով և կը գրաւէ իր աշակերտներուն յարգանքը և սէրը։ Քիւրքճեան որ առաջադրած էր ըլլալ եկեղեցական, և նոյնիսկ ստացած էր դպրութեան և ուրարակրութեան աստիճան, ազատագրութեան գործին կը նուիրուի և յեղափոխական գաղափարներու կը յարի և կ'սկսի յորդորել իր ընկերներն որ զինուին ինքնապաշտպանութեան համար։ Այդ փափաքով Հայկական ջարդերու օրերուն* (1895) *ձեռք կը բերէ զէնք մը որուն մազ կը մնայ որ առաջին զոհը երթար իր դպրոցական ընկերը՝ Հմայեակ Ուզուըլեան ինչպէս վերը* (*էջ* 1224) *տեսնուեցաւ։ Իր բարեկամներուն խորհուրդները՝ կուսակցական կեանքէ քաշուելու համար անօգուտ կ'ըլլան և հետզհետէ անոր մէջ կը խորասուզուի, նախ Հնչակեան կուսակցութեան և ապա Դաշնակցութեան յարելով։ Իր աշակերտներն էին, Կեսարիոյ բոլոր հաւատաւոր Դաշնակցականները, թէև փոքրաթիւ։ Միակ վերապահութիւնը որ անիկա դրած էր ան էր որ ինքն յայտնապէս չէր երեւեր, այլ տանը անկիւնը նստած իր հետեւորդները յառաջ կը վարէր։ Վանքի վարժարանին աշակերտական խլրտումը* (1908) *թէ* «կուսակցական ուսուցիչներ կ'ուզենք» *Վիշապեանի և Քիւրքճեանի և իրենց ընկերներուն մէկ խաղն էր, որ սարքած էին ձեռք առնելով Ներսէս Շահնուր անունով աշակերտ մը*(1)։

*Քիւրքճեանի գլխաւոր առաքինութիւնն էր հակառակ իր մոլեռանդութեան, իր ասպարէզին դէմ չդաւաճանելը, և իբր ուսուցիչ իր հեղինակութիւնը պահելը, ամբոխային գործերէ հեռու մնալով։ Վահան Քիւրքճեան որ գրեթէ իր բոլոր ուսուցչական ասպարէզը Կեսարիա անցուցած է,* 1901*ին միայն մէկ տարի Օրտուի Ազգ. վարժ.ի տնօրէնութիւնը ստանձնած է, և յաջորդ տարին դարձած է իր ընտանիքին մօտ իր տեղը հոն զրկելով Իսրայէլ Արսլանը։ Իսկ* 1914*ին ալ Մերսին հրաւիրուած և գացած է, սակայն առանց հոն մնալու անցած է Կ. Պոլիս, և անկէ դարձած Կեսարիա և իր տնօրէնութեան պաշտօնը շարունակած՝ Միացեալ Ուսումնարանի մէջ։ Վահան Քիւրքճեան, բառին իսկական առումով, ուսուցիչ եղած էր, վառվռուն, բարեհամբոյր, անկեղծութեան տիպար և մանաւանդ անխոնջ աշխատող, սակաւախօս և լուրջ։ Լոկ պատկառազդու դէմքին ու նայուածքին արտայայտութիւնով կը կառավարէր դպրոցը։ Իր մասնագիտութիւնն էր հայերէնը, զոր քաջ գիտէր։ Մաքուր աշխարհաբար մը ունէր։ Իր առաջին յօդուածն էր* Փունջի *մէջ Սարմըսաքլըի նկարագրութիւնը* (*տես վերը, էջ* 881)*։ Ունի նաև աւանդավէպի մը նկարագրութիւն Կաթ-Աղբիւրի վրայ* Բիւրակնի (1899, *էջ* 360) *մէջ։ Իսկ Ա. Թ. Դ. ստորագրութեամբ թարգմանածոյ մանկավարժական յօդուածներ* «Հայեկ»*ի մէջ որուն շուրջը բոլորուած էին իր աշակերտները։*

*Վահան Քիւրքճեան՝ նախ ձերբակալուեցաւ* 1914*ին, և ազատ ձըգուեցաւ վանքի Դաշնակցական մատնիչ Միհրան Եազըճեան, խնայեց իրեն, իբր բարեկամ յայտնելով թէ Քիւրքճեան Դաշնակցականաց մաս չի կազմեր։ Մարտիրոս Գարսամեան Դաշնակցութեան տետրակներն ու թուղթերը միասին Զալթ փախցուցած և այնտեղի քաջերուն միացած ըլլալով, փաստեր կը պակսէին, սակայն երբ կառավարութիւնը Ազիզիյէէն բերաւ Դաշնակցական երկրորդ մատնիչը՝ անարժան ուսուցիչ Գէորգ Եըլանճեանը, անիկա չխնայեց Վահան Քիւրքճեանի, որ իբր Դաշնակցական* շէժ *ձերբակալուեցաւ, և մահուան դատապարտուեցաւ։* 20 *Օգոստ.* 1915*ին ցերեկը ժամը* 8*ին զայն կախաղան բարձրացուցին հինգ ուրիշներու հետ։*

***

Հասով 183 կրթական մշակներու կենսագրութիւնները փոքր ի շատէ ներկայացնելէ յետոյ հարկ կը համարեմ հոս աւելցնելու թէ անոնք անշուշտ մէկ մասն են այն համեստ աշխատաւորներուն որոնք դաստիարակեցին ու ուսուցին նորահաս սերունդները: Ծանօթ են նաեւ հարիւրի չափ ուրիշ կրթական մշակներու անունները, որոնք մեծ մասամբ արդէն յիշած եմ իբր ուսուցիչներ այս կամ այն կրթական հաստատութեան սակայն իրենց մասին իմ ունեցած ծանօթութիւնները այնքան քիչ են որ զանոնք մասնաւոր յիշատակութեան առարկայ ընել աւելորդ համարեցի: Հոս իբր ընդհանուր եզրակացութիւն Կեսարիոյ դպրոցական կեանքին ըսեմ թէ Օսմ. Սահմանադրութենէն առաջ, Կեսարիոյ առաջնորդական թեմը միայն Հայ եկեղեցիներու կից ունէր 42 վարժարան, 3795 աշակերտ, 1140 աշակերտուհի, 107 ուսուցիչ, 18 ուսուցչուհի, եւ ամսական 20450 ղրշ. ծախք, որուն 10050 ղրշ.ը եկեղեցիներու սնտուկէն, 5300 ղրշ.ը թոշակներէ եւ 5100 ղրշ. զանազան նպաստներէ կը հայթայթուէր (*տես Վիճակացոյց Գաւառական Ազգային վարժարանաց Թուրքիոյ*, 1901, *էջ* 9)։

1908էն յետոյ եթէ վարժարաններու թիւը չէ աւելցած, սակայն աշակերտներու թիւը բազմացած է: Աւելցնելով անոր վրայ Հայ Կաթոլիկ եւ Հայ Աւետարանական դպրոցներու, ինչպէս նաեւ Յիսուսեանց եւ Ամերիկեան Միսիոնարական վարժարաններու աշակերտները, առնուազն 5–6 հազար Հայ դպրոցական աշակերտներ ուսում եւ դաստիարակութիւն կ'ստանային վարժարաններու մէջ, եռանդով պատրաստելով կեանքի, գեղեցիկ հեռանկարով մը, որ անշքացուց թրքական բարբարոսութիւնը, անօրինակ ոճիրով մը:

## Ժ.

## ԿՐԹԱԿԱՆ ԵՒ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ, ԼՍԱՐԱՆՆԵՐ ԵՒ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ

1839, 1860, 1879 և 1908 *չորս նշանաւոր թուականներ են Թուրքիոյ Հայոց համար։* 1839*ին* Թանզիմաթի *հրատարակութեամբ առաջին անգամ ըլլալով գէթ առերեւոյթս Թուրքիա կը ճանչնար իր բաղկացուցիչ տարրերուն քաղաքային իրաւանց հաւասարութիւնը, ինչ որ կը մղէր զանոնք հետապնդելու իրենց հաւաքական շահերը և պահպանելու իրենց ազգային առանձնայատկութիւնները։* 1860*ին Հայերը՝ կ'ստանային իրենց եկեղեցական ու քաղաքային իրաւանց օրէնքը՝ Սահմանադրութիւնը, որ ազգային վերազարթման մը ազդանշանը կ'ըլլար։ Իսկ* 1879*ին՝ երբ կը կնքուէին Այ-Ստեֆանոյի և Պերլինի կրկնակ դաշնագիրները, Հայ ազգը բաղձալի հանգրուանի մը հասած ըլլալու պատրանքը կ'ունենար որ ահարկու յուսախաբութեամբ մը կը*

---

(1) *Կեսարացի, որ յետոյ ուսուցիչի պաշտօն կը վարէր Բերա՝ Ս. Գր. Լուսաւորչեան կաթոլիկ դպրոցը և ձերբակալուեցաւ* 24 *Ապրիլ* 1915*ին Կ. Պոլսոյ մտաւորականներու հետ և ըստ Թէոդիկի* (Յուշարձան Ապրիլ Տասնըմէկի, *էջ* 38) *նահատակուած է։ Կեսարիոյ մէջ մինչև տարագրութիւն ապրող ուսուցիչ մը, այս անձին համար կ'ըսէ թէ «եղաւ կոտոշաւոր մատնիչ մը»։ Ես չկրցայ լուծել այս հակասութիւնը։*

վերջանար, սակայն կ՚ունենար կարեւոր հետեւանք մը ազգին ճակատագրին վրայ, որ 1908ին Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութեամբ յոյսը կ՚ունենար թէ ազատած էր այն անելէն որուն մէջ մտած էր, սակայն կրկին պատրանքի մը կը մատնուէր եւ այս անգամ՝ այս երազը իր իսկ գոյութիւնը կ՚արժէր, վասնզի իրականապէս Թուրքիոյ հայութիւնը կը բնաջնջուէր իսպառ։ Հետեւաբար այս չորս թուականները ունեցած են ճակատագրական բնոյթ մը մեզի համար եւ արդիւնքներ, ինչպէս բոլոր Թրքահայոց նոյնպէս նաեւ անոր մաս կազմող, Կեսարիոյ Հայոց համար։

Հանրային կրթութեան գործին մեծ կարեւորութիւն տրուիլ կ՚սկսի մասնաւորապէս 1839էն յետոյ, եւ յատկապէս շեշտելի է որ կարծես այդ թուականէն յետոյ է որ ծագում կ՚առնէ ազգութեան գաղափարը եւ ընդհանուր եւ հասարակաց բարիքի մը տեսակէտը կը մտնէ կարգ մը ձեռնարկներու մէջ։ 1846ին Պատրիարքարանին տրուած նոր կազմակերպութիւնը որով թաղային, դպրոցական եւ եկեղեցական գործերը կը կեդրոնանային Պատրիարքարանին մէջ առաջին նմաններէն մէկն էր այդ ընդհանրացման։ Կրթական շարժման մէջ ալ այդ հանրացման ոգին նշմարուիլ կ՚սկսի։

Նոր հասնող սերունդներուն նախակրթութիւն մը տալու գաղափարը արդէն ինքնին ընդհանրացած էր եւ Կ. Պոլսոյ թաղերուն մէջ բացուած էին դպրոցներ եկեղեցիներուն յարակից։ Ասիկա դեռ բաւական չհամարուելով Կ. Պոլսոյ դպրոցներուն հոգատար բազմաթիւ ընկերութիւններ կազմուած էին, երբ Հոգեւոր եւ Գերագոյն ժողովները Պատրիարքարանի գործերը տնօրինելու սկսան (1847) եւ կրթական գործին տրուած այս անջատ աշխատութիւնները իրարու ներդաշնակեցնելու կամ անոնց վարչութիւնն ալ Պատրիարքարանի մէջ կեդրոնացնելու համար «Ազգային դաստիարակութեան հանրային եւ կանոնաւոր ընթացք մը հաստատելու եւ անոր գործադրութեան հսկելու» նպատակով 1853 Հոկտ. 22ին կազմեցին «Ուսումնական խորհուրդ» մը եւ պաշտօնական յայտարարութեամբ ծանուցին ժողովուրդին։ Այս յայտարարութեան մէջ բնաւ յիշատակութիւնը չէ եղած «Ուսումնական Խորհուրդ»ին իրաւասութեան շրջանակին մինչեւ ո՞ւր տարածուելուն, սակայն Գերագոյն ժողովը իր օժանդակ այս մարմինը կազմած ատեն ապահովաբար գէթ վայրկեանին համար աչքի առջեւ ունէր միայն Կ. Պոլիսն եւ թերեւս ապագային անոր իրաւասութիւնը նաեւ գաւառներու վրայ տարածել կը մտածէր, վասնզի գաւառներու մէջ դեռ ընդհանրացած չէին դպրոցները։ Սակայն ազգային ամբողջ զանգուածը լուսաւորելու գաղափարը չէր կրնար ուշադրութենէ վրիպիլ եւ ապահովաբար պիտի գտնուէին մարդիկ որ այդ գաղափարին նուիրուէին, ճիշդ այնպիսի պահու մը երբ կեդրոնին մէջ հեղինակութիւն մը ստեղծելու ջանքեր կ՚ըլլար։

Կ. Պոլսոյ հայութեան համար տեսակ մը ամօթ եւ նախատինք էր պանդուխտներու վիճակը, որոնք մասնաւորապէս իրենց տգիտութեան պատճառով Կ. Պոլսոյ մայթերուն վրայ ամէնէն նուաստ գործերու մէջ կը տուայտէին։

Ազգային ընդհանուր զարգացման աշխատողներուն մէջ գտնուեցան ուրեմն կարգ մը անձնուէրներ որոնք 1847ին գեղեցիկ գաղափարը յղացան կազմելու «Անձնուէր Ընկերութիւնը» որուն նպատակն էր



«չափահասներու ձրիաբար դաս տալ»։ Այս կիրակնօրեայ դասախօսութեանց գլխաւոր աշակերտներն էին գաւառացի պանդուխտները, որոնք այս կերպով կը լուսաւորուէին։ Այս ընկերութիւնը անուղղակի կերպով ծառայեց նաեւ գաւառներու լուսաւորութեան գործին, իրեն գործունէութեան դաշտ ընդգրկելով գաւառացւոց այն մասը որ Կ. Պոլսոյ մէջ կը գտնուէր։ Այս ընկերութիւնը 1860ին, Սահմանադրութեան հաստատութեան հետ կը վերակազմուի, Յարութիւն Մարգարեանի եւ Քրիստոստուր Ղազարոսեանի ջանքերով, եւ կը կատարէ շատ կարեւոր դեր մը, ու կու տայ փայլուն արդիւնքներ։ Կեդրոնն էր՝ Ղալաթիա ուր ամէնէն շատ էին պանդուխտները։ Հետզհետէ ճիւղեր ունեցաւ Բերայի, Օրթագիւղի, Գում-Գաբուի, Եէնի-Գաբուի, Սկիւտարի, Գասմ-Փաշայի եւ այլն մէջ։ Ղալաթիոյ կեդրոնական ճիւղը շարունակուած է մինչեւ 1890՝ Քրիստոստուր Ղազարոսեանի մահը։

Նոյն նմոյշին վրայ հիմնուած էր նաեւ 1857ին Գում-Գաբուի Եղբայրասիրական Ընկերութիւնը։

Կ. Պոլիս գտնուող գաւառացի պանդուխտներու մտաւորական զարգացման Կ. Պոլսեցիներու կողմէ ընծայուած այս աջակցութիւնները նախաքայլեր էին որոնց պիտի յաջորդէին անշուշտ նաեւ ուրիշներ։ Արդարեւ Կ. Պոլսեցիք հազիւ թէ իրենց մօտը ապրող գաւառացիներուն միտքերը լուսաւորելու աշխատիլ սկսած էին երբ Կ. Պոլսոյ մէջ գտնուող գաւառացի պանդուխտներ մտածութիւնը ունեցան իրենց բնիկ գաւառին մանուկները դաստիարակելու գործին նպաստել իրենց միջոցներովը։

Կ. Պոլիս հաստատուած գաւառացիներու մէջ Կեսարացիք ո՛չ քանակով եւ ո՛չ ալ որակով ետ կը մնային ուրիշ գաւառներու բնակիչներէն։ Հետեւաբար պէտք է ի պատիւ իրենց ըսել թէ այս նպատակով նախաձեռնարկ ըլլալու պատիւն ալ իրենց կը պատկանի, վասնզի Թալասցիք են որ առաջին անգամ 1848ին Կ. Պոլսոյ մէջ կը կազմեն Մամիկոնեան Ընկերութիւնը իրենց գիւղի Վարդ-Պատրիկեան վարժարանին նպաստելու նպատակով։ Այս ընկերութիւնը որուն վրայ խօսելու առիթ ունեցած եմ (տես վերը, էջ 743 եւ 1160–61) բարերար դեր մը կատարած է կարեւոր դրամագլուխ մը գոյացնելով եւ մեծապէս օգտակար եղած է մինչեւ 1876–77, Օսմ. պետութեան սնանկութիւնը եւ իր ալ քոնսոլիտի վերածուած դրամագլուխին փճացումը, նպաստելով տեղւոյն վարժարանին, որ ընկերութեան քայքայումէն յետոյ անշըքացաւ։ Այնպէս որ 1881ին Կ. Պոլիս հաստատուած Թալասցիք առանց այս անգամ Համիտեան ռէժիմի խստութեանց պատճառով ընկերութեան անունը առնելու, միացան եւ վերստին իրենք ստանձնեցին իրենց գիւղին վարժարանին հոգը։

Մամիկոնեան Ընկերութեան ձեռնարկը ապահովաբար խթան մը եղաւ որ Կեսարացիք, իրենք ալ հաստատեն ընկերութիւն մը, որ թէեւ Կեսարիոյ մէջ կազմուած՝ սակայն Կ. Պոլսոյ մէջ իր ներկայացուցիչներն ունէր եւ հոն հաստատուած Կեսարացիներէն նպաստներ կ՚ստանար։ Այդ ընկերութիւնն էր՝ Հայկազնեանը որ 1858 Սեպտ. 1ին կազմուած եւ 1859 Սեպտ. 1ին վերակազմուած էր Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեանի եւ Աբրահամ վարժապետի ջանքերով եւ ինքն կը մատակարարէր Հայկեան վարժարանը (տես վերը, էջ 1103 եւ 1120)։

Նոյնպէս Թալասի Վարի Թաղի բնակիչները՝ ազնիւ նախանձա-

խնդրութեամբ իրենց վարժարանը յետադէմ վիճակին մէջ չձգելու համար, իրենք ալ Վերի Թաղեցւոց օրինակին հետեւելով կազմեցին 1859ին Արշակունեաց Ընկերութիւնը իրենց Թաղը եւս օժտելու համար վարժարանով մը (Մունատիի Էրճիյաս, 1861, Թ. 88) ինչպէս որ ալ յաջողեցան։ Այս ընկերութիւնը եւս շարունակուեցաւ մինչեւ 1877–78, մինչեւ իր Քօնսօլիտի վերածուած դրամագլուխին փճացումը (տես էջ 743 և 1161)։

Այս տեսակ ընկերութիւններ՝ օրինակելով Կ. Պոլիսը որուն ամէն թաղերուն մէջ դպրոցներու օժանդակող ընկերութիւններ կազմուած էին, ուրիշ գաւառներու մէջ ալ ծնունդ առին։ Սակայն անոնք միշտ մասնաւոր բնոյթ ունէին և դէպի ընդհանրութիւն չէին ձգտեր։

1860էն յետոյ՝ Սահմանադրութեան հաստատութեամբ երբ ազգին մէջ ընդհանուր միութեան և հաւասարութեան գաղափարը մտաւ, սկսան ընդհանուր ձեռնարկներ և աւելի լայն շրջանակներ ընդգրկել։

Անձնուէր Ընկերութեան սաները — այսինքն Կ. Պոլսոյ մէջ Կիրակնօրեայ դասերով ուսում առած պանդուխտները, որոնք ճաշակը առած էին նախնական ուսման — 1864ին հիմնեցին Անձնուէր Սանուց Ընկերութիւնը, որուն անդամները բացին նմանօրինակ վարժարաններ Սեբաստիոյ (1866–1871), Սղերդի, Տիարպէքիրի (1866), Կարնոյ (1869) և Թօգաթի (1880) գիւղերուն մէջ։

Այս ընկերութենէն քիչ առաջ՝ 1862ին հիմնուած էր արդէն Բարեգործական Ընկերութիւնը որուն նպատակներէն մէկն ալ գաւառներու մէջ վարժարաններ հաստատելն էր, սակայն անիկա չկրցաւ գործադրութեան դնել իր այս նպատակը, մինչդեռ Անձնուէր Սանուցը կրցաւ գործել բաւական լայն շրջանակի մը մէջ։

Կեսարացիք, որոնք այնքան նշանակելի դիրք մը ունէին Կ. Պոլսոյ մէջ իրենք ալ ընդհանուր հոսանքին խառնուեցան, հակառակ իրենց Թրքախօս ըլլալու հանգամանքով տեսակ մը մեկուսացման մատնուած ըլլալուն, և իրենց գաւառին լուսաւորութեան համար ձեռնարկներ ըրին։

Այսպէս Կ. Պոլիս հաստատուած Կեսարացիք կը կազմեն 1861 Ապրիլ 16ին Ուսումնասիրաց Ընկերութիւնը որուն նպատակն էր Կեսարիոյ մէջ տպարան մը հիմնել (Մունատիի Էրճիյաս, Թ. 183, 31 Մայիս, 1862)։ Այս ընկերութեան ներշնչող գաղափարը՝ անշուշտ Խրիմեանի ձեռնարկն էր Վարագայ վանքին մէջ տպարան հաստատելու համար։ Այս ընկերութիւնը մէկ տարուան մէջ 4983 ղրշ. մուտք ունեցած է (Մունատի, Թ. 165, 17 Ապրիլ, 1862)։ Այս ընկերութեան գլխաւոր կազմակերպողները եղած են Կ. Պոլսոյ մէջ Մանուկ Արզըեան, Ագաթան Թահթապուրունեան, Յովակիմ Սոտամպոլեան, և Գրիգոր Էվրէնեան։ Ընկերութիւնը թէև Կ. Պոլսոյ մէջ կազմուած, անոր անդամներուն մեծամասնութիւնը Կեսարիա բնակող երեւելիներ և ծանօթ դէմքեր եղած են։ Դժբախտաբար ընկերութիւնը չէ կրցած իրագործել իր նպատակը, և իր հաւաքած դրամները մնացած են ընկերութեան Գանձապետ դատական պաշտօնեայ և Ֆէլէֆ հանդէսի խմբագիր Յովհաննէս Պալըգճեանի քով, որ մուրհակով մը խոստացած էր նպատակին իրագործուած առեն տոկոսովը հաւաքուած դրամները հատուցանել, սակայն 1884ին երբ բաժնետէրները փափաք յայտնած են նոյն







գումարը փոխանցել Աղքատաց Հոգաբարձութեան դժուարութիւններ հանած էր դրամին վճարման համար, ինչպէս կը հասկցուի, մեր ձեռքը գտնուած վաւերագիրէ մը։ Դժբախտաբար անյայտ կը մնայ թէ յետոյ կարելի եղա՞ծ է ստանալ այս գումարը։ Նոյն տարին կը կազմուի նաև Արամեան Ընկերութիւնը «Կեսարիոյ մէջ աղջկանց վարժարան մը բանալու նպատակով» (Մասիս, թ. 473, 1 Մարտ, 1861) որուն կեդրոնը Կ. Պոլիս էր։ Եւ ինչպէս տեսանք (տես էջ 1120–1) անիկա որքան արդիւնաւոր կերպով գործած է, իրագործելով իր նպատակը, հիմնելով աղջիկներու վարժարան մը որ յետոյ դարձաւ Ազգային։

Այս օրինակին վրայ 1862ին կը կազմուի Կէրմիրի Պարթեւեան Ընկերութիւնը գրեթէ բոլոր Կէրմիրցիներու մասնակցութեամբ, և կը յաջողի 1862ին մանչերու և 1869ին աղջիկներու վարժարան հաստատել Կէրմիրի մէջ և զանոնք երկար տարիներ հոգալ, ինչպէս արդէն ըսած եմ (տես էջ 764 և 1162)։

Քիչ յետոյ, 1864ին, Էվէրէկցիք ալ կը շարժին, և կը կազմեն Դպրոցասէր Ընկերութիւնը որ ինչպէս ըսի (էջ 823) 30000 ղրշ. կը հաւաքէ դպրոցի մը շինութեան համար։ Նոյն թուականներուն կամ քիչ մը աւելի ուշ, Պոլսեբնակ Մունճուսունցիք ալ կը կազմէին Անձուէր Ընկերութիւնը որ ինչպէս արդէն յիշեցի (էջ 795) յաջողած էր բաւական կարեւոր դրամագլուխ մը գոյացնել և անով Կ. Պոլսոյ մէջ գնել կալուածներ, որոնց եկամուտով կը կառավարուէր Մունճուսունի վարժարանը։ Այս ընկերութիւնը 1880ական թուականներուն դեռ կը շարունակուէր։ Իսկ 1868ին Պոլսեբնակ Կեսարացիք նախաձեռնարկ կ'ըլլան իրենց գաւառին մէջ բարձրագոյն ուսումնարանի մը հաստատութեան, կազմելով Կեսարիոյ Ս. Կարապետի Վանուց Ուսումնասիրաց Ընկերութիւնը որուն նպատակն էր ինչպէս ըսուեցաւ (տես էջ 1131, 1134-35) Ս. Կարապետի վանքին մէջ գիշերօթիկ վարժարան բանալ։

Այսպէս Կեսարացիք օրինակելով միւս գաւառները Ազգ. Սահմանադրութեան հաստատութենէն յետոյ իրենց դպրոցներուն կամ մտաւորական զարգացման նպաստող ընկերութիւններ կը կազմեն։

Իսկ ինչ որ բոլորովին նոր է և կեսարական, կազմութիւնն է այնպիսի ընկերութիւններու, որոնք միայն մտաւորականին չէին հայեր, այլ կը միտէին տնտեսապէս բարձրացնել ժողովուրդը, վասնզի Կեսարացիք քաջ ըմբռնած են թէ ամէն բան —նաև զարգացումը— դրամով ձեռք կը բերուի, այս աշխարհիս վրայ։ Հետեւաբար ժողովուրդը կրթելուն չափ էական էր անոր տնտեսական վերածննդեան գործին նպաստել, որպէսզի անիկա իր դրամով ունենար բարւոք վարժարաններ և ինքզինքը զարգացնէր։

Այս կեսարական առողջ մտածութեամբ է անշուշտ որ 1861 Մայիս 1ին կազմուած է Կ. Պոլսոյ մէջ Երկրագործական Ընկերութիւնը, Թէնէսէի և Էվէրէկի մէջ երկրագործութիւնը տարածելու համար(1)։

(1) Այս Երկրագործական ընկերութիւնը պէտք չէ շփոթել 1848ին կազմուած համանուն ընկերութեան հետ որ Այի-Մամայի երկրագործական արքունի դպրոցին հայազգի 15 աշակերտները (որոնցմէ մին էր Կարապետ Փանոսեան) կազմած էին նախագահութեամբ վարժարանին նորընտիր տնօրէն Գրիգոր Աղաթոնի։ Այս ընկերութիւնը աւելի ընդհանուր ձգտում մը ունէր նպատակ ունենալով



Այս ընկերութեան երկու գլխաւոր հիմնադիրներն էին Կարապետ Փանոսեան, Մանզումէի խմբագիրը, և Գէորգ Գըլըճեան, յայտնի սեղանաւոր մը, երկուքն ալ Կեսարացի։ Ընկերութեան անդամները —որոնց թիւը 300 հոգի էր— ըստ Կարապետ Փանոսեանի (Միւնատիի Էֆքեար, թ. 108, 14 Նոյեմ. 1861) բացի 5-10 անձերէ մեծամասնութեամբ կը բաղկանային Էվէրէկցի և Թէնէսէցի կօշկակար, ներկարար և վերջապէս «Զալմալը շալվարլը» աղքատ անձերէ, որոնք եռանդով փարած էին գաղափարին։ Իր կազմութենէն վեց ամիս յետոյ 28000 ղրշ. դրամագլուխ մը ունէր։ Ընկերութիւնը վարձած էր երկու սրճարաններ և բացած՝ մէկ ծխախոտի խանութ։ Նոյնպէս ծրագրած էին հացագործի խանութ մը բանալ։ Այս կերպով կը գործադրէին տեսակ մը Քոօբէրադիֆի ծրագիր։

Գէորգ Գըլըճեան, փոխ-ատենադպիրը ընկերութեան, նոյնիսկ կը տրամադրէ իր մէկ սենեակը անվարձ՝ ուր կը հաստատուի ընթերցարան մը, և դասատու մը կը վարձուի՝ որպէսզի դասեր տրուի։

1862ին ամառը կը կատարուին մեծ շուքով տարեդարձի հանդիսութիւններ Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի մէջ պատարագով և Վէլի Էֆէնտիի դաշտին մէջ խրախճանքով մը, ուր Դաւիթ աղա Յակոբեան, Թովմաս Թէրզեան, Յարութիւն Նշանեան, Եղիազար Մելիքեան հայերէն, Բիէր տը Թրօա՝ ֆրանսերէն և Գէորգ Գըլըճեան՝ թուրքերէն ճառեր կը խօսին, և նշանաւոր վկայեալ հողագէտ և երկրագործական կայսեր. վարժարանի ուսուցիչ Գէորգ Իսթիմարաճեան կը խոստանայ ամէն օժանդակութիւն ընծեռնել ընկերութեան (տես Միւնատիի Էֆքեար, 1862 Յուլիս 27, թ. 205)։

Այս նմոյշին վրայ կը կազմուի նաև տեղւոյն վրայ՝ Մունճուսունի մէջ 1863 Սեպտ.ին Հողագործական Ընկերութիւնը որուն վրայ արդէն խօսեցայ (էջ 795)։ Այս ընկերութիւնը, որ 246 բաժանորդ ունեցած էր, արդէն 1865ին ծախու առած էր 5 արտ Մունճուսունի մէջ և թթաստանի վերածած (Վարագայի Հավադիս, թ. 273)։ Շատ ուշագրաւ է որ այս ընկերութեան նպատակն էր իր դրամագլուխը շատցնելէ յետոյ կանոնաւոր դպրոց մը բանալ։ 1886ին անիկա բաւական դրամագլուխ ժողված էր, սակայն անհատական քմահաճոյքներ արգելք եղած էին իր նպատակը իրագործելու։

1870ական թուականներուն արդէն Ազգ. Սահմանադրութեան գործադրութեան տասնամեակը լրացած էր և անոր սկզբունքները հետզհետէ աւելի տարածուած էին հանրութեան մէջ, երբ վերջապէս գաւառացի Հայոց ողբալի վիճակը կեդրոնին ուշադրութեան առարկայ դառնալ սկսաւ, Խրիմեանի մոգական ներգործութեամբ, որ Կ. Պոլիս եկած էր 1869ին իբր Պատրիարք՝ գաւառի Հայոց վիճակը բարւոքելու հաստատ մտադրութեամբ։ Եթէ անիկա իր մտադրութիւնը լիովին գործադրել չկրցաւ սակայն կայծը

ծաղկեցնել երկրագործութիւնը Հայոց մէջ, երկրագործութեան վրայ գիրքեր և թերթերու մէջ յօդուածներ հրատարակել եւն.։ Այս ընկերութեան իրենց հովանաւորութիւնը և քաջալերութիւնը ընծայած էին ժամանակին մտաւորականներէն Յակոբ Կրճիկեան, Տօքթ. Սերվիչէն, Գէորգ Սթիմարաճեան, Մկրտիչ Աղաթօն, Նիկողոս Զօրայեան և ուրիշներ։

բանկցուց։ Խրիմեան՝ գաւառի Հայոց վիճակը բարելաւելու հարցը առեղծեց և ասոր համար նոյնիսկ Բ. Դրան դիմելու և անոր ուշադրութիւնը Անատոլուի հարստահարութեանց վրայ դարձնելու յանդգնեցաւ։ Ասիկա առաջին օղակն էր շղթային որ յետոյ մեծ համեմատութիւններ պիտի առնէր։ Պէտք է խոստովանիլ թէ Խրիմեանի պատրիարքութիւնը կը զուգադիպէր յղի ժամանակի մը։ Խրիմեանի պէս խորունկ հայեցողութիւն ունեցող անձ մը որ ազգային վերածնութեան գաղափարով այնքան խանդավառուած էր, կարելի չէր որ չազդուէր ժամանակին ներշնչումներէն։ Այդ օրերուն յայտնի է թէ Թուրքիոյ հպատակ ժողովուրդներուն մէջ ազգային ինքնորոշման շարժումը որքան զգալի էր և ինչ նոր խմորումներ կը պատահէին։ 1869ին՝ Խրիմեանի պատրիարքութեան առաջին տարին իսկ Պուլկարները իրենց ազգային վերածննդեան առաջին հիմնաքարը կը դնէին Պուլկար ազգային եկեղեցին կազմելով՝ անջատ Յոյն-Օրթոտոքս ազդեցութենէն։ Պալքանեան ազգերէն շատեր արդէն զէնքով ձեռք բերել կը նկրտէին իրենց անկախութիւնը, գանգատելով թրքական հարստահարութիւններէ և խժդժութիւններէ։ Այս շարժումները իրենց նախընթացները ունէին և անոնց արդիւնքը յայտնի էր։ Յունաստան, Սերպիա, Ռումանիա, Գարատաղ, նմանօրինակ շարժումներու ծնունդն էին։

Հետեւաբար նոր շարժումներն ալ հաւանօրէն նորէն հոն պիտի ձգտէին։ Խրիմեանի պէս իտէալապաշտ ու երազող հոգի մը, և ֆրանսական դաստիարակութեամբ սնած Կ. Պոլսոյ մտաւորականներու ոչ նուազ երազող սերունդը, բնական է թէ պիտի ազդուէր ժամանակին և միջավայրին այս հանգամանքներէն և ինքն ալ իր ազգին համար նման ապագայ մը պատրաստելու պիտի աշխատէր։ Ուստի հարստահարութեանց բարձումը կառավարութենէն պահանջելով հանդերձ տգիտութենէն ազգային զանգուածը փրկելու ջանքերը կըրկնապատկուեցան, մասնաւորապէս Խրիմեանի թելադրութեամբ։

Նոր սերունդը, բայց մանաւանդ դպրոցական պատանիներ երազող հոգիներու յատուկ եռանդով մը, յարեցան գաւառացիները կըրթելու գործին։

Այդ օրերուն Կ. Պոլսոյ մէջ երկրորդական կրթութեան նուիրուած հաստատութիւնն էր Նուպար-Շահնազարեան վարժարանը, որուն բարձրագոյն կարգի ուսանողները, որոնց մէջ կը գտնուէին մասնաւորապէս Կիլիկեցի տասը ժառանգաւոր աշակերտները, իրենց ընկերակից Մինաս Չերազի գրգիռովը և խնամակալութեան նախագահ Ներսէս եպ. Վարժապետեանի քաջալերանքովը, հիմնեցին Վարդանեան Ընկերութիւնը որ նպատակ ունէր կրթութիւնը ծաւալել Կիլիկիոյ մէջ։ Այս ընկերութիւնը առաջին վարժարանը բացաւ Հաճընի մէջ։ Այս ընկերութիւնն էր որ 1871ին իր անունը փոխելով կոչուեցաւ Կիլիկեան Ընկերութիւն և տեւական կեանք ու գործունէութիւն ունեցաւ։

Շահնազարեանի ուսանողութեան այս փորձը գեղեցիկ օրինակ մը հանդիսացաւ պետական կրթական փայլուն հաստատութեան մը՝ Գալաթա-Սէրայի Լիսէին Հայ ուսանողներուն(1), որոնք 1870ին հիմնե-

(1) Ասոնց մէջ էին Յովհաննէս Թորոսեան, Յովհաննէս Շահնազար, Յովսէփ Նուսուֆեան, Ստեփան Տամատեան, Կարապետ Սրվանձեան և ուրիշներ որոնք յետոյ այնքան գործունէութիւն ունեցած են հանրային կեանքի մէջ։



ցին Դպրոցասիրաց Ընկերութիւնը որուն նպատակն էր Տուրուբերանի մէջ վարժարաններ բանալ նախապէս հաստատուն դրամագլուխ մը կազմելէ յետոյ։

Դպրոցականներու կազմած այս երկու ընկերութիւնները, հիմնադիրներուն հետ դպրոցէն դուրս կ'ելլէին և հանրութեան հետ յարաբերութեան կը մտնէին և աւելի ընդարձակ ասպարէզ կ'ընդգրկէին։

1876ին՝ Պալքանեան ազգերու խլրտման սաստկագոյն շրջանին երկու ուրիշ ընկերութիւններ ևս կը կազմուին դարձեալ գաւառացւոց կրթութեան նուիրուած։ Այդ երկու ընկերութիւններն էին Արեւելեան Ընկերութիւնը և Արարատեան ընկերութիւնը (1876 Ապրիլ 15) որոնք դարձեալ երիտասարդական ձեռնարկներ (1) էին, որոնք բեղմնաւորուեցան և կատարեալ կենսունակութեամբ մը գործել սկսան։ 1877ին ասոնց յաջորդեց Խիզանու Ուսումնասիրաց Ընկերութիւնը որ նոյնպէս նպատակ ունէր գաւառային վարժարաններ բանալ սկսեալ Խիզանէն։ Նոյն տարին (1877) կը կազմուի նաև Ասիական Ընկերութիւնը, որուն նպատակն էր գաւառային վարժարաններու դասագիրքեր հայթայթել։

Միեւնոյն ատեն Կ. Պոլսոյ մէջ եռանդուն ջանքեր կը տեսնուին ժողովրդային զանգուածները դաստիարակելու շինիչ բանախօսութիւններով և լսարաններու կազմակերպութեամբ։

Ասոնց անդրանիկ կազմակերպիչն է Մանզումէի Էֆքեարի խմբագիրը Կարապետ Փանոսեան որ 1867 Յունվար 21էն սկսեալ Բերայի Գաֆէ Բարիզիէնի մէջ առաջին անգամ ատենախօսութեանց շարքի մը սկզբնաւորութիւնը կ'ընէ 5 ղրշ. մուտքով ի նպաստ Պարտիզակի սովելոց և յաջորդաբար զանազան թաղերու մէջ կը շարունակէ զանոնք։ Իսկ հաստատուն լսարաններ միաժամանակ կը բացուին 1869 Դեկտեմբերին, Սկիւտարի Եէնի Մահալլէի (ճեմարանի շէնքին մէջ), Սամաթիոյ (Հայկական Ընկերութեան Լսարան) և Եէնի-Գաբուի (Խօսարան անունով ծանօթ) թաղերուն մէջ։ Քիչ յետոյ անոնք կը գրաւեն որոշ տեղ մը և 1871ին կը կազմուին Սկիւտարի Ընթերցասիրաց, Սամաթիոյ Ա. Բ. Գ.ի Բարեկամ, և Խասգիւղի Ժողովրդասիրաց, Ընկերութեանց լսարանները, որոնց կը յաջորդեն ուրիշ թաղերու լսարանները, որոնց մէջ կը խօսէին ժամանակին ամենէն կարկառուն և ամենէն մտացի մտաւորականները, մասնաւորապէս դաստիարակիչ նիւթերու շուրջը։

Այս ձեռնարկները որոնք Կ. Պոլիսը կ'ոգեւորէին չէին կրնար անարձագանգ մնալ Կեսարիոյ մէջ, որուն զաւակները Կ. Պոլսոյ հան-

(1) Ասոնցմէ ամենէն կորովին և ամենէն զօրաւորն Արարատեան Ընկերութիւնն էր, որուն հիմնադիրներն էին Օրթագիւղցի 4-5 խանդավառ երիտասարդներ՝ Արփիար Արփիարեան, Զարեհ Տիչմանեան, Պետրոս Վասիլեան, Յովհաննէս Ըլտըրզեան և Մկրտիչ Փորթուգալեան։ Արարատեանին սկզբնական նպատակն էր Կ. Պոլիս գտնուող գաւառացի տղոց ուսում և արուեստ սորվեցնել, սակայն յետոյ նկատելով որ Կ. Պոլսոյ մէջ ուսում առնողներէն շատեր կը դժկամակին գաւառ դառնալ, որոշուեցաւ տեղւոյն վրայ գաւառացի տղոց ուսում տալ և Վանայ Ալիւր գիւղի մէջ Փորթուգալեանի տեսչութեամբ բացուեցաւ առաջին վարժարանը։

րային կեանքին կը բերէին այնքան եռանդով՝ իրենց մասնակցութիւնը։ Կ. Պոլսոյ շարժումը հետեւաբար ունեցաւ իր անդրադարձումը Կեսարիոյ մէջ ուր Լսարանական կազմակերպութիւն մըն էր իր նախնական օրերուն Տօքթ. Աւետիս Երէցեանի Լուսաւորչեան Ընկերութիւնը —հիմնուած 1870ին— որ յետոյ Ուսումնասիրական անունը առաւ և ծնունդ տուաւ տեսակ մը կրօնական հատուածականութեան (տես այս մասին էջ 1054–5)։ Այս լսարանական կազմակերպութեան դէմ մաքառելու պէտքը յետոյ առիթ տուաւ Հայ եկեղեցւոյ շրջափակին մէջ կազմակերպելու ուրիշ մարմիններ, նոյնպէս կիրակնօրեայ քարոզութիւններով ազգը լուսաւորելու համար։ Այս տեսակ մարմին մըն էր Կրթասիրական Ընկերութիւնը որ 1881ին կազմուած էր Կեսարիոյ մէջ գիշերօթիկ վարժարան մը բանալու համար աղքատ տղոց, և ունէր 400 բաժանորդ թէ՛ Կ. Պոլիս և թէ՛ Կեսարիա։ Այս ընկերութիւնը հեռաւոր նպատակ նկատելով այս վարժարանին հիմնարկութիւնը 1882ին աճապարեց բանալ «Կիրակնօրեայ վարժարան» մը, ուր բարոյական դասեր կու տար Խաչատուր Պաղտասարեան, Կեսարիոյ մէջ ապրող իր ժամանակին ամէնէն պատրաստուած անձերէն մին (տես էջ 1228)։ Այս «Կիրակնօրեայ վարժարան»ը ներկայ կ՚ըլլային 500-1000 հոգի, սակայն դժբախտաբար կը դժկամակէին վճարել 40 փարա ամիսը, ինչպէս նաև քանի մը լումա նետել գանձանակը (Յ. Գ. Զամուրեան, Մասիս, թ. 3403)։

Այս ընկերութիւնը որուն հիմնարկութեան ձեռնարկած էին կեսարացիք մեծ աշխուժիւ, և տարի մը շարունակած՝ բաւական բաժանորդներ գտնելով, հետզհետէ կազմալուծուեցաւ։ Եւ իր տկարութեան մէջ դարձեալ իր նպատակին դիմելու նախանձախնդրութեամբ այսպէս կիրակնօրեայ վարժարանի վերածուեցաւ և Աւետարանականներու «Ուսումնասիրաց»ին դէմ մաքառելու համար կամաց կամաց ստացաւ կրօնական բնոյթ, երբ սկսաւ Պաղտասարեանի հետ հրաւիրել նաև քահանայ մը։ Սակայն երկար չտեւեց իր լսարանը որ փակուած էր 1886ին։ Ընկերութեան դրամը կը մնար անհատներու քով և անոնցմէ 50 ոսկին —որ փրկուած էր— որոշուած էր այդ թուականին յատկացնել առաջնորդին ճանապարհածախսուց (Վտարանդին, Մասիս, 1886, էջ 195)։

Նոյն օրերուն (1880ական թուականներուն) կազմուած է նաև Հոգեսիրաց Ընկերութիւնը որ նոյնպէս կիրակի օրերը քարոզելու համար հաստատուած էր։ Ասոր լսարանին մէջ կը քարոզէր երբեմն Տ. Մարտիրոս քհ. Նիկողոսեան։ Հոն կը ժողովուէին 150–200ի չափ անձեր։ Այս ընկերութիւնն ալ հազիւ 2-3 տարիներ կրցած է պահել իր լսարանը։ 1886ին կը մտածուէր իր դոյզն դրամագլուխով դպրոց մը բանալ և շարունակել գործը։

Ասոր ժամանակակից է կանանց կազմած Պարզասիրական Ընկերութիւնը որ երկու նպատակ ունէր, առաջինը՝ Կիրակի օրերը մէկ տեղ գալով Ս. Գիրք կարդալ և քարոզել և երկրորդ՝ անպէտ զարդերէ և պաճուճանքներէ զգուշացնել գեղեցիկ սեռը։ Ասոնք կը ժողովուէին եկեղեցիները և իրենցմէ մէկը կ՚ելնէր ատեան, ժամ մը, ժամուկէս կը խօսէր շարունակ և միւսները կը լսէին «մեղա Աստուած» բացագանչելով։ Ամիսը կամ երկու ամիսն անգամ մըն ալ կը հրաւիրէին քահանաներէն մին «որ՝ տեսնելով որ տիկնայք անգամ սկսած են գործունէութիւն ցուցնել



մինչդեռ իրենք մեռելի պէս կը ննջեն, անպէտ եւ անիմաստ խօսքեր մրմնջելով կը նստին եւ կանանց վրայ տեսնուած աւիւնին կէսն անգամ իրենց վրայ չեն ցուցներ...» (Վտարանդին, Մասիս, 1886, էջ 195)։

Ասոնք ունէին նաև դպրոց մը 1886ին Բոշաներու թաղին մէջ (տես էջ 1127) 150 ղրշ. ամսական ծախքով։ Կիրակի օրերը, յետ պաշտաման սովորութիւն ըրած էին պնակ շրջեցնել, անոր հասոյթը այս դպրոցին յատկացնելու համար (Վտարանդին, Նոյն)։ Վտարանդին կ՚ըսէ թէ «սիրելի է տեսնել որ» ընկերութիւնը իրեն համար ընտրած երկու նպատակներուն մէջ «եւս յաջողած է» (Նոյն)։

Այնպէս կը թուի թէ յետոյ այս երկու ընկերութիւնները որոնք նոյն նպատակը կը հետապնդէին իրարու հետ գործակցութիւն մը ստեղծած են (Մասիս, 1886, էջ 194)։

Այս օրերուն դարձեալ կրթական հին ընկերութիւնները կը պահէին իրենց գոյութիւնը, և շրջակայ գիւղերու մէջ նոր նոր ընկերութիւններ կը կազմուէին։ Այսպէս Էվէրէկի Դպրոցասէր Ընկերութիւնը (1864) դպրոցին շինութիւնը ի կատար ածելէ յետոյ թէև կը քայքայւէր, սակայն 1860ական թուականներուն վերջերը կամ 1870ականներու սկիզբը կը կազմուէր Հայկեան Ընկերութիւնը (տես վերը, էջ 824), որ այս անգամ դպրոցին օժանդակել իրեն նպատակ ունէր։ Այս ընկերութիւնը կ՚երեւայ թէ երկար կեանք չէ ունեցած վասնզի 1875ին կը տեսնենք որ Էվէրէկի մէջ նոր ընկերութիւն մը կը կազմուի Դպրոցասէր Ընկերութիւն անունով, դպրոցին նպաստելու նպատակով (Մանզումէ, 7 Օգոս. 1875, 2904)։ Նոյնպէս 1872էն առաջ Գէլէկէսի կ՚ունենար Ազգասիրաց Ընկերութիւնը օժանդակելու համար գիւղին Տաճատեան վարժարանին, որ 1883ին կը վերակազմուէր ինչպէս արդէն ըսի (էջ 773)։

Թուրքիոյ Հայոց մէջ ընկերութիւններու գործունէութեան մեծապէս մղում տուաւ Ռուս և Թուրք (1877–1878) պատերազմէն յետոյ Ներսէս Վարժապետեանի, Խրիմեանի և այլ ժամանակակից դէմքերու նախաձեռնութեամբ ազատագրել Արեւելեան քրիստոնեայ ազգերու շարքին մէջ Հայերն ալ դնելու միամիտ ձեռնարկը, որուն հետեւանքը եղաւ Այ-Ստեֆանոյի դաշնագրութեան 16րդ և Պերլինի 61րդ յօդուածները, որոնք նշանաւոր հետեւանքներ ունեցան ընդհանուր կերպով Թրքահայոց և մասնաւորապէս անոնց գաւառական մասին համար, վասնզի 1879 թուականը իրեն հետ բերաւ թէ՛ յոյս և թէ՛ յուսահատութիւն։

Հայոց նկատմամբ Թուրքիոյ յանձնառութիւնները Այ-Ստեֆանոյի 16րդ և Պերլինի 61րդ յօդուածներով, յոյսը կը բերէին Հայ ազգին ապագայ բարօրութեան և ազգային քաղաքական վերածնութեան, իսկ անոնց մեռեալ տառ մնալը՝ ազգը կը մատնէր զարհուրելի յուսահատութեան։

Առաջին յոյսը և հետագայ յուսահատութիւնը մեծապէս զգալի եղաւ Թուրքիոյ գաւառներու հոծ հայութեան վրայ, վասնզի յոյսի շրջանին մէջ ազգը իր ջանքերը կրկնապատկեց արժանի հանդիսանալու համար իրեն ապահովուած նոր պայմաններուն և կրցածէն աւելին ըրաւ իր տգէտ զանգուածները լուսաւորելու համար, որով գաւառներու մէջ կարելի եղաւ հանրային կրթութեան գործին մեծապէս ծաւալ տալ և մտաւորական մակարդակին աստիճանաչափը կարճ շրջանի մը մէջ զգալապէս բարձրացնել։ Իսկ յոյսի շրջանին յաջորդող

հմայաթափութենէն ծնած յուսահատութիւնը՝ տասնամեայ ապառումէ մը յետոյ (1879-1890) իր պոռթկումը ունեցաւ և բոլոր յուսահատական շարժումներուն պէս, մոլուցքի մը սաստկութիւնը և կատաղութիւնը ցոյց տուաւ, նոյնիսկ անկարելին ձեռք բերելու նկրտելով։

Հայ յեղափոխութեան շարժումը՝ որ հակազդեցութիւնն էր 1879 թուականին ներշնչած յոյսին վիժումին, ինքն ալ իր կարգին յոյսեր ու յուսախաբութիւններ բերաւ ժողովուրդին, որ իրականին մէջ չարաչար տուժեց ո՛չ միայն անսովոր հալածանքի մը ենթարկուելով այլ ջարդերով կոտորակուելով։

Գաւառի հայութիւնը սակայն այս սարսափելի կացութեան մէջ կրցաւ ապրիլ ու պահպանել իր գոյութիւնը միայն անոր համար որ յոյսի և յաջողութեան շրջաններու մէջ, կենսունակութիւն և կեանք տուող ոգիէ մը ներշնչուած էր։

Այդ ոգին հայացի դաստիարակութիւնն էր, որ հալածանքի շըրջանին մէջ իսկ գէթ թագնապէս գործեց և հասնող սերունդներն ալ նոյն ներշնչման տակ պահեց։

Արդարև 1879ը, սին յոյսերով խանդավառուած ժողովուրդին և անոր միամիտ վարիչներուն համար, որոնք պահ մը հաւատք ունեցած էին գաւառացի Հայոց վիճակին բարուոքման, բացումը եղաւ նոր շրջանի մը։

Նախ՝ պէտք է ըսել թէ Թրքահայաստանի մէջ նոր վարչութեան մը հաստատութեան յոյսը բովանդակ հայութեան ուշադրութիւնը հոն կեդրոնացուց։ Ռուսահայք որ մինչև այդ թուականը բոլորովին անտարբեր էին և շատ քիչ յարաբերութեան մէջ Թրքահայ գործիչներու հետ, սկսան սերտ գործակցութեան մը և մեծապէս նպաստեցին գաւառներու վերազարթման գործին։ Գրիգոր Արծրունի, Ռուսահայ մտաւորականութեան ամէնէն գործօն և ուժեղ անձը, Մշակի Կ. Պոլսոյ թղթակիցին Հայկակի (Արփիար Արփիարեան) ներշնչումովը, բոլոր Ռուսահայ խաւերու մէջ առաջ կը բերէ համակրանք Թրքահայաստանի լուսաւորութեան գործին նուիրուած ընկերութիւններու համար և անոնք մեծապէս կը քաջալերուին Ռուսահայոց կողմէ։ Այս քաջալերանքին, ինչպէս Թրքահայ պաշտօնական և անպաշտօն շրջանակներէ կրթական ընկերութիւններու 1879էն յետոյ գտած մեծ քաջալերութեան և ստացած կարեւորութեան մէջ, մեծ բաժին ունի նաև սա իրողութիւնը թէ Պերլին գացող պատուիրակները չէին կրցած Հայ ազգին կրթական վիճակը ցոյց տալ գոհացուցիչ։ Հետեւաբար ընդհանուր համոզում եղած էր սա գաղափարը թէ եթէ Հայերը կըրթական աւելի շատ հաստատութիւններ ունեցած ըլլային ձեռք բերուած արդիւնքը աւելի լաւ պիտի ըլլար։ Հետեւաբար գաւառին մէջ դպրոցներ բանալով յառաջիկային կը յուսային ձեռք բերել այն ինչ որ չէին կրցած հիմա ստանալ։

Ուստի ամէն ջանք ու ճիգ ի գործ դրին գաւառներու կրթութեան նպաստելու համար։ Մինչև այն թուականը միայն տղոց դաստիարակութեան կարեւորութիւն տրուած էր, մինչ այն թուականին կը տեսնենք գրեթէ միեւնոյն ժամանակ կազմուիլը երկու ընկերութիւններու որոնք կիներէ կը բաղկանային և իրենց սեռին կրթութեան համար կազմուած։ Այդ երկու ընկերութիւններն են Ազգանուէր Հայուհեացը որ հիմնուած է 1879 Ապրիլ 11ին։ Մի քանի օր յետոյ (Մա-



յիս 1) Օրթագիւղի Հռիփսիմեանցէն շրջանաւարտ մի քանի դեռատի օրիորդներ կը հիմնէին Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը։

Այս երկու ընկերութիւններն ալ ոչ նուազ արդիւնաւորութեամբ կը գործեն միւս ընկերութեանց հետ, որոնցմէ Արեւելեանը և Դպրոցասիրացը արդէն 1878 նշանաւոր թուականին իրարու միացած էին և աւելի ընդարձակ ասպարէզ մը ընդգրկած։

1880ին երբ տակաւին Եւրոպա լքած չէր Թուրք Հայկական բարենորոգմանց հարցը և Հայերն կը պահէին իրենց յոյսերը, երբ դեռ դիւանագիտական բանակցութիւններ կը կատարուէին այդ հարցին շուրջ, բնական է թէ գաւառներու զարգացման ջանքերը չէին կրնար կասիլ և հետզհետէ աւելի մեծ մղում կ'ստանային։

Ամէն ընկերութիւն գերագոյն ջանքը ցոյց կու տար և մրցումը մեծ էր։ 1880ին Արարատեանը ունէր 11 վարժարան և 3300 ոսկի դրամագլուխ, Դպրոցասիրաց Արեւելեանը՝ 5 վարժարան և 1400 ոսկի դրամ, և Կիլիկեանը՝ 8 վարժարան և 400 ոսկի դրամ։ Սակայն ցրուած ոյժերով ընդհանուր նպատակի մը դիմելէն շատ աւելի լաւ էր բոլոր ոյժերը միացնել և միահամուռ ձգտիլ հասարակաց նպատակին։

Այս գաղափարը շատերու կողմէ ընդգրկուեցաւ, սակայն անիկա գործադրել շատ դիւրին չեղաւ։ Այդ մեծ գործին գլխաւոր վարիչ եղաւ Գր. Արծրունի, որ Արարատեանի գլխաւոր աջակիցն էր։ Անիկա Դպրոցասիրաց Արեւելեան ընկերութեան կողմէ Կովկաս ղրկուած Յովհաննէս Շահնազարի առաջարկին վրայ նախաձեռնութիւնը ստանձնեց այդ միութեան, խոստանալով առնուազն տարեկան 12000 րուպլիի նպաստ մը, եթէ բաղձացուած միութիւնը կատարուի։

1880 Յունիս 1ին, Ներսէս պատրիարք բախտը կ'ունենար օրհնելու այս միութիւնը, որով այդ երեք ընկերութիւնները «Հայոց Միացեալ Ընկերութիւնն» անունին ներքեւ և ընդհանուր և համազգային քաջալերութիւնը իրենց զօրավիգ ունենալով հետզհետէ աւելի ընդարձակ գործունէութիւն մը կ'ունենային։

Կեդրոնէն դէպի գաւառները հասած այս օգնութիւնը իր կարգին խրախուսիչ օրինակ մը եղաւ գաւառներու համար և անոնք մղուեցան տեղական միջոցներով կամ կեդրոնին մէջ հաստատուած իրենց բարեկեցիկ հայրենակիցներուն մասնաւոր նպաստներով, վարժարաններ բանալ։ Հետեւաբար բոլոր հայաբնակ նահանգներու մէջ կրթական գործին տրուեցաւ մեծ մղում և վարժարաններու թիւը զգալապէս աւելցաւ։ Կեսարացիք այս շարժման մէջ դարձեալ յետամնաց չեղան։ Իրենց արտահայաստանեան դիրքը և մանաւանդ իրենց նիւթականապէս նպաստաւորեալ վիճակը իրաւունք չէր տար Միացեալէն և Հայուհեացէն ակնկալութիւն մը ունենալու, սակայն իրենք պէտք էր որ իրենց սեփական միջոցներովը գործէին։

Արդարև 1880էն յետոյ Կեսարիոյ կրթական գործին մէջ շատ կարեւոր յեղաշրջում մը կը մտնէր։ Այդ թուականին դարձեալ իրենց աչքերը Կ. Պոլիս կը դառնան և անկէ բերուած ուսուցիչներ Կեսարիոյ վարժարանները արդիական շունչով մը կառավարել կ'սկըսին։ Նոյնպէս Կ. Պոլիս հաստատուած Կեսարացիք զոհողութիւններ կ'ընեն իրենց վարժարաններուն համար։ Կեսարիոյ թեմին ամէնէն յետամնաց վայրերու Կ. Պոլսոյ պանդուխտները, ինչպէս Էվէրէկցիք, Ֆէնէսէցիք և Էֆքէրէցիք Միացեալին օրինակովը, կը կազմեն գրեթէ

Նոյնաժամանակ, 1880ական թուականներու սկիզբը երեք ընկերութիւններ Մեսրոպեան, Ռուբինեան և Մեսրոպեան անուններով իրենց ծննդավայրին վարժարաններուն նպաստելու համար։

Եվէրէկցիներու կազմածը՝ Մեսրոպեանը, տեսանք թէ ի՛նչպէս կըրցաւ օգտակար ըլլալ տեղւոյն վարժարանին, հոն ղրկելով կարող ուսուցիչ մը՝ Երուանդ Երկաթեանը (տես վերը, էջ 824, 1169 և 1201), նոյնպէս նաև տեսանք թէ Ֆէնէսէցիներու Ռուբինեանը՝ ինչպէս հիմնապէս ու արմատական փոփոխութեան ենթարկեց կրթական գործը Ֆէնէսէի մէջ (տես էջ 824, 1170 և 1183)։ Իսկ Էֆքէրէցիներու կազմած Մեսրոպեան Ընկերութիւնը 1883ին կը յաջողի բանալու դպրոց մը այդ գիւղին մէջ։

Նոյնպէս այս շրջանին կը հանդիպիմ 1881ին, յիշատակութեանը Թալասի Ուսումնասիրաց Ընկերութեան որուն նպատակը անծանօթ կը մնայ ինծի, սակայն հաւանօրէն կրթական նպատակ մը պէտք է ունեցած ըլլայ։ Կան թերեւս ուրիշներ ալ, աւելի համեստ ու աննշան, որոնք չեն յիշատակուած կամ ինծի անծանօթ մնացած են։

Յոյսի այս շրջանին, մեծ էին ոգեւորութիւնը և ջանադրութիւնները, որոնց զուգահեռաբար և հակադրաբար կը զարգանար նաև Թուրք կառավարութեան կասկածը՝ Հայ ազգին նկատմամբ։

Հայկական բարենորոգմանց հարցը որովհետև եւրոպական դիւանագիտութեան կողմէ զէնք մը եղած էր Օսմ. կառավարութեան դէմ և պարբերաբար կը շահագործուէր, ուստի Հայերը իբր օտար միջամըտութեան պատրուակ, հաշտ աչքով չէին դիտուիր։

Սուլթան Համիտ առանց նկատի առնելու թէ Հայերը մինչև 1878 երկու անգամ ուղղակի Բ. Դրան դիմած էին հարստահարութեանց վերջ մը տալու շատ օրինաւոր բաղձանքով և իրենց ցաւերը Եւրոպայի ներկայացնելու գաղափարը իր թելադրութեամբ միայն գործադրած, Հայոց անունով Եւրոպայի գործադրած ճնշումներէն ջղայնացած ըլլալ կը թուէր և Հայոց ենթադրեալ անջատողական շարժումներուն տեղի չտալու համար կը դիմէր ճնշողական միջոցներու։ Ասոր մէջ ոչ նուազ դեր ունէր նաև Հայկական պոռոտախօսութիւնը և անշրջանկատութիւնը որ պէտք էր խոստովանիլ թէ մեծ դեր կատարած է կառավարական կասկածները արթնցնելու համար։

Հասնող սերունդները՝ որովհետև Կ. Պոլսոյ ներշնչման և ֆրանսական ազդեցութեան տակ կը դաստիարակուէին՝ երազողներ եղան մեծ մասամբ։ Մինչև 1878, եւրոպական ներշնչման տակ ազգայնական զգացումները կ'արծարծուէին ազգին ամէն խաւերուն մէջ, մասնաւորապէս դրականութեան միջոցաւ։ Ազգ. վերածննդեան գաղափարը, խաղաղ միջոցներով, նոր գաղափար մը չէր։ Ամբողջ սերունդ մը զայն իր կուրծքին տակ սնուցեր էր։ Բանաստեղծը, թատերագիրը, գրագէտը և հրապարակագիրը, իրենց բոլոր ուշադրութիւնը կեդրոնացուցեր էին հայութիւնը արթնցնելու համար իր խոր քունէն և անոր ներշնչելու համար փառաւոր վերածննդեան մը յոյսը։ Սակայն անոնք բնաւ չէին կրցած գուշակել արիւնալի ապագան որուն կը դիմէին։ Անոնք կը կարծէին թէ Օսմ. կառավարութենէն Հայ ազգին համար հետզհետէ իբր շնորհք մասնաւոր առանձնաշնորհումներ ստանալով անոր ապագան պիտի ապահովէին։ Ազգային Սահմանադրութիւնը որ այս ձգտումին մէկ արդիւնքն էր, իր կարգին ո՛չ նուազ դեր կատարած է, ժողովուրդին ինքնագիտակցութիւնը արծարծելու և անոր ուսուցանելու պարտուց և իրաւանց սկզբունքները։ Մէկ կողմէն սերունդին տրուած ազգայնական կրթութիւնը և ժողովուրդին ինքնագիտակցութեան զարգանալը, միւս կողմէ Թուրքիոյ հպատակ միւս ազգերուն մէջ տեսնուած ըմբոստական տրամադրութիւնները, որոնք առհասարակ բոլոր հպատակներն ալ կասկածելի կը դարձնէին, արդէն Թուրք կառավարութեան դէպի Հայերը ունեցած հայեացքին մէջ փոփոխութիւն մտցուցած էին։ Հետեւաբար երբ 1877ին Ռուսիա պատերազմ հրատարակեց Թուրքիոյ դէմ, քրիստոնեայ ժողովուրդներու ազատագրութեան համար, Թուրք կառավարութեան ատելութիւնը դէպի քրիստոնեաները ա՛լ աւելի շեշտուեցաւ։ Եւ հակառակ անոր որ Հայերը մինչև՛այն ատեն ոեւէ ըմբոստական շարժում չէին ըրած, պատերազմի ընթացքին աղէտներու ենթարկուեցան։

Վանայ շուկայի հրդեհը, Ալաշկերտի կոտորածը, Շէյխ Ճէլալէտտինի և Շէյխ Ուպէյտուլլահի և այլ քիւրտ ցեղապետներու կատարած կոտորածներն ու թալանները, պատերազմին դեռ սկիզբը, ցոյց կու տան թէ ի՛նչ դառն կացութեան մատնուած էին Հայերը, որոնք արդէն միշտ մասնակի հարստահարութեանց առարկայ, այս անգամ ընդհանուր սարսափի կ'ենթարկուէին։

Խրիմեան առաջինը եղաւ որ իր «Վանգոյժ»ով և «Հայգոյժ»ով ի գիր արձանագրեց աղէտը և ազգ. ընդհանուր ուշադրութեան առարկայ ըրաւ զայն։ Ազգը իր մէջէն զգաց անցնիլը սարսուռի մը։ Ազգին վարիչները՝ պատերազմի վախճանին՝ երբ Արեւելեան խնդրոյն վճռական լուծում մը կը տրուէր անկարելի էր որ չփորձուէին իրենք ալ գէթ մաս մը բան ձեռք բերել և ապագայ աղէտներու առաջքն առնելու ջանք մը չընել։

Եւ այդ փորձը ունեցաւ իր արդիւնքը։ 16րդ յօդուածը, և ապա 61րդ չարաղէտ յօդուածը, և անոր հետեւորդ այն մեծ ոգեւորութիւնը որ Հայերը ունեցան իբր թէ նոր պայմաններուն պատշաճեցնելու համար ինքզինքին, և վերջապէս մեծ հիասթափութիւնը որ անոնք կրեցին, երբ դիւանագիտական դանդաղ բանակցութիւններէ յետոյ ինքզինքնին գտան միս մինակ Թուրքերու սրուած ժանիքներուն դէմ։ Ոմանք կարծեցին թէ Պերլինի վեհաժողովին մէջ Հայ պատուիրակներու կրած ձախողութեան մէկ պատճառն ալ Հայոց անպատրաստ ըլլալն էր ո՛չ միայն կրթական գետինի վրայ այլ նաև արիւնի մկրտութեան տեսակէտով։ Հետեւաբար իրաւունք ձեռք բերելու համար ոյժը միայն միջոց նկատել սկսան։

Խրիմեան՝ որ առաջապահներէն մին եղած էր մարդկային անբռնաբարելի իրաւունքներու պահպանութեան ջատագովներուն, շարունակ իր քարոզներով և գրութիւններով կը շեշտէր թէ երկաթէ շերեփներ՝ զէնքեր հարկ են հերիսան՝ ազատութիւնը ձեռք բերելու համար։ Մինաս Չերազ «Թէ ի՞նչ շահեցանք Պերլինի վեհաժողովէն» գրքոյկով նոյն գաղափարը կը մշակէր՝ Հայերը գործի և զոհաբերութեան հրաւիրելով։

Այս քարոզութիւնները անտարբեր չէին կրնար թողուլ նոր սերունդը, որ իր ստացած դաստիարակութեամբ վերին աստիճան ընդունակ էր երազը իրականութեան հետ շփոթելու և խանդավառ զգացումներով նետուելու գործի ասպարէզ։ Եւ պատահեցաւ անխուսա-

փեկին ու ուսումնապէս քիչ շատ զարգացած վայրերու մէջ գտնուեցաւ երիտասարդութիւն մը որ ընդգրկեց յեղափոխական գաղափարներ եւ կազմեց դաւադրական մարմիններ։

Առաջին քայլը առաւ Կարին որ սահմանին մերձաւոր քաղաք մը եւ ամէնէն աւելի զարգացած վայրն ըլլալով Հայաստանի, միշտ առաջապահի դեր կատարած է։ 1882ին Կարնոյ մէջ առաջին անգամ կը կազմուի Զինակիր Ընկերութիւնը։ Խումբ մը երիտասարդներ կը հաւաքուին կը միանան եւ զէնք կրելու անհրաժեշտութիւնը զգալով՝ ինքզինքնին կ'անուանեն «զինակիր», նպատակ ունենալով անձին եւ ընկերին պաշտպանութիւնը՝ վտանգ մը սպառնացած պահուն։ Ընկերութիւնը կը տեւէ մինչեւ 1883։ Մատնութեան մը հետեւանօք կառավարութիւնը կը կազմալուծէ զայն հալածանօք ու ձերբակալութիւններով, (Ամէնուն Տարեցոյցը, 1911, էջ 171)։

Շուտով Կարնոյ օրինակին կը հետեւի Վասպուրականի երիտասարդութիւնը, որ ամէնէն աւելի կը գտնուէր ընդունակ միջավայրի մը մէջ։

Հոն իր բոյնին մէջ էր «Վարագայ Արծիւ»ն՝ Խրիմեան, իր շուրջը բոլորած իր իսկ գաղափարներովը սնուցած երիտասարդութիւն մը, բոլորն ալ մտաւորական։ Հոն էր նաեւ ոչ նուազ երազող հոգի մը, Մկրտիչ Փորթուգալեան, որ Վանայ «Կեդրոնական վարժարան»ի իբր տնօրէն Միացեալի կողմէ ղրկուած էր եւ իր կարգին նոր հասնող սերունդները կը ներշնչէր խանդավառ զգացումներով։

Հոն շփում կար Կովկասի երիտասարդութեան հետ, հոն այդ միջոցին կուսակալի խորհրդականն էր Մարկոս Աղաբէկեանի պէս թունդ ազգայնական զգացումներով ծանօթ մէկը, որ Վանայ հրդեհին պատճառները երեւան հանելու պաշտօն ունէր։ Հոն էր վերջապէս իբր ռուսական հիւպատոս ազգային զգացումներով լեցուն Հայ մը՝ Կոստանդին Կամսարականը։

Այս խանդավառ միջավայրին մէջ ահա կը ծնի առաջին դաւադրական յեղափոխական մարմինը «Սեւ Խաչ» անունով, որ իսկզբան խաղաղ միջոցներով, բանախօսութիւններով գործի սկսաւ, երբեմն տէրորական նախաքայլեր առաւ եւ հետզհետէ շրջակայ գաւառներու մէջ տարածուելու ձգտում ցոյց տուաւ։

Այս կազմակերպութենէն ժամանակով կրտսեր կամ անոր հետ նոյնաժամանակ կը կազմուին Կարնոյ, Փոքր Հայքի եւ այլ շրջանակներու մէջ նմանօրինակ կազմակերպութիւններ, որոնք հետզհետէ աւելի պիտի ընդարձակուէին եւ մինչեւ Կ. Պոլիս պիտի տարածուէին։

Այս կազմակերպութիւնները՝ իրարու գոյութեան անգիտակ կը գործէին առանց որոշ ծրագրի ու ուղղութեան։ Ասոնցմէ ոմանք խիստ անխոհեմ քայլեր առին եւ Թուրք կառավարութեան ուշադրութիւնը իրենց վրայ հրաւիրեցին։

Մասնաւորապէս Վանայ «Սեւ Խաչ»ը եւ Կարնոյ «Զինակիր Ընկերութիւն»ը ամէնէն առաջ զգալի ըրին իրենց գոյութիւնը եւ կառավարական հալածանքի ենթարկուեցան։

Սեւ Խաչի կազմակերպած լսարաններէն մէկուն մէջ Փորթուգալեանի մէկ անխոհեմ բանախօսութիւնը, կազմակերպութեան անունով ցրուած մի քանի ազդարարութիւնները, ինչպէս նաեւ 1882ին Վարագայ վանքին մէջ տօնուած Սահմանադրութեան հանդէսին կազմակերպու-



թիւնը՝ անխոհեմ ու անիմաստ պոռոտախօսութիւններ, որոնք գործն վիժեցնելու միայն կրնային ծառայել, իրենց անմիջական հետեւանքը ունեցան եւ Մարկոս Աղաբէկեանի պաշտօնանկութեամբ (1884) հակահարուածները սկսան։

1885 Մարտ 16ին Վանէն տարագրուեցաւ նախ Փորթուգալեանը։ Մի քանի օր յետոյ (Մարտ 29ին) իբր յեղափոխական ձերբակալուեցաւ Սեւ Խաչի անդամներէն մէկը եւ նոյնիսկ յաջորդ օրը (Մարտ 30) դէպի Կ. Պոլիս ճամբայ հանուեցաւ Խրիմեանը։

Յունիս 3ին կառավարութիւնը փակեց եւ կնքեց Վարագայ վանքին տպարանը, ինչպէս նաեւ Կեդրոնական վարժարանը։ Յունիս 13ին բազմաթիւ երիտասարդներ ձերբակալուեցան, եւ անոնցմէ ոմանք Գոնիա, Տիարպէքիր եւ այլուր աքսորուեցան։ Կարնոյ կազմակերպութիւնն ալ քահանայի մը միջոցաւ մատնուած եւ հոն ալ բազմաթիւ ձերբակալութիւններ պատահած էին։

Սակայն ասոնք պատճառ չեն ըլլար Հայ երիտասարդութիւնը ետ դարձնելու իր ընդգրկած շարժումէն եւ անիկա նորհաւատներու մոլեռանդութիւնը ցոյց կու տայ հալածանքին առջեւ տեղի չտալու։

Փորթուգալեանի ըմբոստ ու անսանձ հոգին այլեւս գետին չգտնելով Թուրքիոյ մէջ իր պոռոտախօսութեանց համար, կ'անցնի Եւրոպա եւ Մարսիլիոյ մէջ կ'սկսի հրատարակել Արմենիա անուն թերթ մը (1885 Յուլիս 20), յայտարարելով թէ «Արմենիա կը լինի Հայ ժողովուրդին նուիրուած ազատական մի թերթ, որ ազատ մտածումները բռնաբարող եկեղեցականներին, ընդդիմադիր պիտի լինի միշտ...»։

Փորթուգալեան այս կերպով Վասպուրականէն արտասահման կը տեղափոխէր յեղափոխական գործունէութիւնը եւ առաջին անգամ կը կազմուէր «Հայոց Հայրենասիրական Միութիւնը» որուն օրգանը կ'ըլլայ Արմենիա։

Այս միութիւնը որ Վասպուրականի մէջ ծրագրուած գաղափարին մէկ արտայայտութիւնն էր եւ երկրին եւ կացութեան աւելի պատշաճ ծրագիր մը ունէր, օտար երկրացի խիզախ երիտասարդներու կողմէ անբաւական նկատուեցաւ եւ Արմենիայի աշխատակիցներէն՝ Նազարբէկեան, Սըվազլեան եւ այլք՝ դժգոհ այդ թերթին եւ անոր վարիչ ուղղութեան սահմանափակ ու սեղմ ծրագիրէն, հիմնադիրները դարձան յեղափոխական մարմինի մը որուն բերանը եղող Հնչակ լրագիրը սկսաւ հրատարակուիլ 1887ին Նազարբէկեանի խմբագրութեամբ եւ այսպէս արտասահմանի մէջ ալ երկու տարբեր ծրագրով անջատ մարմիններ գոյութիւն առին եւ իրարու աններդաշնակ ուղղութեամբ գործել սկսան։ Իբր առաջին եւ գլխաւոր արդիւնք՝ իրենց գործունէութեան Օսմ. կառավարութիւնը իր ուշադրութիւնը անգամ մը եւս լարեց եւ Հայ ազգին մէջ խմորուող շարժումը իր սաղմին մէջ իսկ խեղդելու աշխատեցաւ օր մը պալքանեան ազգերու ապստամբութեան պէս զանգուածային ըմբոստութեան մը առջեւ չգտնուելու համար։

Այսպէս Կարնոյ եւ Վանայ կազմակերպութիւնները ջնջելէ յետոյ, Համիտական կառավարութիւնը, Հայոց այս շարժումը արդիւնքը համարելով Հայոց մտաւորական զարթման եւ Միացեալ Ընկերութիւնը՝ անոր գլխաւոր դերակատարներէն մէկը, 1886ին սկսաւ նաեւ հալածել այդ մարմինը։ Հետեւաբար, 1879-1885 շրջանին տեսնուած եռանդուն

այլ խաղաղ աշխատութիւնները, կրթական ընկերութիւնները և ուսումնական հաստատութիւնները, գեղեցիկ փթթումէ մը յետոյ, հետզհետէ կառավարական արգելքներով և դժուարութիւններով քայքայուեցան։

Եւ ինչպէս որ այս ընկերութիւնները՝ նոյնպէս կեսարականները ստիպուեցան եթէ ոչ բոլորովին լուծուիլ, գէթ իրենց գործունէութիւնը սահմանափակել կամ սոսկ հանգանակիչ մարմիններու ձև առնել, որպէսզի կառավարութեան հետապնդութեան և հալածանքին առարկայ չըլլան։ Այնպէս որ այլեւս ընկերութիւններու անունը չէր լսուիր և նոյնիսկ հինէն գտնուածները՝ կը ձեւափոխուէին։ Արամեան Ընկերութեան վարժարանը՝ իր մասնաւոր հանգամանքը կը կորսնցնէ և Ազգայինի կը վերածուի։

Այս շրջանին ընկերութիւններու նպաստին կը յաջորդեն Կեսարացիներու անհատաբար և հաւաքաբար կատարած զոհողութիւնները իրենց վարժարաններու զարգացման և բարգաւաճման համար։ Մասնաւորապէս Կիւմշեան վարժարանին, այդ աղքատ թաղին դպրոցին համար, աշխարհի զանազան մասերու մէջ գտնուող Կեսարացի Հայերու ընձեռնած աջակցութիւնը՝ որ այդ վարժարանը կը դարձնէր Կեսարիոյ դպրոցներուն արդիւնաշատը, նշանակելի պիտի մնայ։ Անիկա իսկապէս կրթական վառարան մը կը դառնայ Դանիէլ Սարաֆեանի երկարատև տնօրէնութեան տակ։ Այս անձն որ Կեսարիոյ մէջ դաստիարակութեան արդիական շունչ տուողը եղած է, ինչպէս յիշեցինք արդէն (տես էջ 1110–1112), կը կատարէ նաև իբր դաստիարակ կարեւոր դեր մը, Կեսարացի տղաքը հրահանգելով հաւաքական աշխատանքի մէջ, կազմելով 1885ին Կիւմշեան վարժարանի Սանուց Ընկերութիւնը, որ դպրոցին շրջանակին մէջ գործելու սահմանուած միութիւն մըն էր։

Երեք տարի յետոյ, 1888ին, նաև կը կազմուէր Ս. Կարապետի Սանուց Գրական Միութիւնը, որուն արժէքը և կարեւորութիւնը և կատարած դերը մինչև վարժարանին փակումը, աշակերտներու ինքնազարգացման տեսակէտով անուրանալի էր (տես վերը, էջ 1141)։

Այս ընկերութիւնները սոսկ ուսանողական բնոյթ ունենալնուն համար էր որ Համիտական ռէժիմի մէջ կրցած են իրենց գոյութիւնը պահել, աւելի թաքուն կերպով, առանց արտաքին աշխարհին հետ յարաբերելու։ Այնպէս որ հակառակ կառավարութեան արգելքներուն անոնք իբր պլպլացող կանթեղներ մնացին Կեսարիոյ Հայոց մէջ և գործեցին, երբ կառավարութիւնը համոզուած թէ ազգային քաղաքական վերածննդեան գաղափարը արգասիքն է Հայոց մտաւորական զարգացման, իր բոլոր ջանքը ի գործ կը դնէր ստեղծելու համար համատարած մեռելութիւն մը, խաւարի ու մթութեան աղջամուղջ մը, որ կաշկանդէր Հայ միտքը և զայն բռնի անգործութեան և անէացումի հարկադրէր։ Սակայն բոլոր այս հալածանքները չկրցան դադրեցնել ազգային կեանքը որ հակառակ հալածանքին շարունակեց իր ընթացքը լուռ, թաքուն ու ծածուկ միջոցներով, կառավարութեան ուշադրութիւնը վրիպեցնելով։ Եւ այս կերպով հակառակ բազմապիսի արգելքներու ազգը իր զարգացումը առաջ տարաւ —ոչ բնականոն այլ կաղն ի կաղն— իր ներքին կենսունակութեամբ։

Մասնաւորապէս մեծ ջանքեր եղաւ և չկասեցաւ հանրային կըր-



թութեան գործը հակառակ յայտնի հետապնդութեան որ կը գործադրուէր հայացի դաստիարակութեան և կրթութեան դէմ։

Ընդհակառակը հալածանքը կարծես թէ աւելի սրեց ազգային գիտակցութիւնը և առաջ բերաւ թէև գաղտնի այլ սակայն ուժգին գործունէութիւն մը որ ազգային գոյութիւնը պահպանելու բնազդով առաջնորդուած Հայ ժողովուրդը իր հաւաքականութեան մէջ կը գործադրէր։

Այդ ջանադրութեանց մէջ կարեւոր բաժին մը ունեցան, մտաւորականները, ուսուցիչները, և Հայ յեղափոխական կուսակցութիւնները։ Մտաւորականութիւնը տրուած պայմաններուն մէջ ազգային զգացումները վառ պահեց, ոգեւին մաքառելով թաքնապէս, երբ խիզախ քայլեր կ'առնէին անդին յեղափոխականները, բոլորովին գրգռելով Համիտի կատաղութիւնը, որ ջարդերով կը պատասխանէր 1895էն սկսեալ իւրաքանչիւր Հայկ. ըմբոստական շարժման։

1894ին Սասունի ապստամբութիւնը, 1896 Սեպտ. 18ին Բ. Դրան ցոյցը, 1896 Օգոստ. 14ին պանքայի ցոյցը և այլն, յայտնի է թէ ինչ հակազդեցութիւններ ունեցան գաւառներուն մէջ, ուր հազարաւոր մարդիկ կեդրոնէ դրուած հրամանի մը վրայ կազմակերպուած ջարդերու ենթարկուեցան իսլամական գրգռուած մոլեռանդութեան անունով։

Այնպէս որ 1895–1908 ժամանակամիջոցը Հայոց համար անսովոր դժբախտութեան շրջան մը եղաւ, ուր Հայերը առանց բացառութեան Հայ ծնած ըլլալնուն համար ենթարկուած էին հալածանքներու և զրկուած՝ միւս քաղաքացիներու ապահովուած ամենատարրական իրաւունքներէն։

Այս ժամանակամիջոցին այլեւս ընկերութիւններու անունն իսկ բերան առնել ներելի չէր։

Հակառակ ասոր սակայն այս դժնդակ ու դժբախտ օրերուն Տրդատ եպ. Պալեան որուն կրթական գործին համար ունեցած մեծ սէրն ու գործնական ոգին միշտ պէտք է յիշատակել, Համիտական ռէժիմի ամէնէն սարսափելի օրերուն ո՛չ միայն կը հովանաւորէ իր բարձրագոյն վարժարանին մէջ Վահան Քիւրքճեանէ կազմուած Գրական Միութիւնը —որ կը շարունակէր իր շաբաթական հաւաքոյթները— այլ նաև կը պահէ գոյութիւնը լսարաններու, քահանաներու քարոզութեամբ։ Իսկ ինչ որ ամէնէն զարմանալին է անիկա գործնական գաղափարը կը յղանայ կազմակերպելու ուսուցչութիւնը, անոնց վիճակին բարւոքման համար 1897ին կազմելով իր իսկ նախաձեռնութեամբ Խնայողական Միութիւն մը, ուսուցիչներուն համար։

Ամէն դասատու իր թոշակին 5o/o պիտի թողուր միութեան սնտուկին։ Նուագահանդէս, նուէր, կաղանդչէք պիտի կազմէին այս միութեան հասոյթի միւս աղբիւրները։ Դրամը պիտի շահագործուէր Վարչական խորհուրդին յարմար դատած եղանակով։ Դրամին բաշխումը պիտի սկսէր 7 տարիէն։ Շահուած գումարին կէսը պիտի բաժնուէր իւրաքանչիւրին բաժինին համեմատութեամբ, իսկ 40o/oը պիտի բարդուէր դրամագլուխին վրայ և 10o/oը պահեստի պիտի մնար, անկար, ծեր կամ հիւանդ դասատուներուն համար։ Ուզողը կրնար հրաժարիլ իր դրամագլուխը ստանալով շահով հանդերձ (Բիւզանդիոն, թ. 105)։ Այս միութիւնը որով կը միանային Կեսարիոյ քաղաքին 40 կրթական

մշակները, ուսուցիչ և ուսուցչուհի (Նոյն), 1 Մայիս 1897ին իր անդրանիկ ձեռնարկը կ'ընէր սարքելով նուագահանդէս մը (Բիւզանդիոն, թ. 141)։

Անկէ զատ նոյնպէս այս տխուր շրջանին Տրդատ եպ.ի հովանաւորութեամբ 1898ին Արամեան աղջիկներու վարժարանին մէջ կը հաստատուի ընթերցատուն մը ունենալ երիտասարդներէ կազմուած Ընթերցատան Ընկերութեան կողմէ, Կիրակի և տօն օրերու մէջ ուսումնասէր երիտասարդներու ձանձրոյթը փարատելու և մայրենի լեզուն տարածելու համար (Բիւզանդիոն, 526)։ Երիտասարդ դպրոցաւարտներ կը հաւաքուէին վարժարան, ընթերցումներ կը կատարէին, և փափաքող շուկացիներուն գրել-կարդալ և հայերէն խօսիլ կը սորվցնէին (Բիւզանդիոն, 16 Մայիս, 1899, թ. 775)։ Անոր յարակից էր կիրակնօրեայ վարժարանը (Լէյաքիմ, Սուրհանդակ, թ. 76) որ դժբախտաբար պէտք եղած ընդունելութիւնը չէր գտած (Նոյն), և Կեսարացիք անտարբերութիւն ցոյց կու տային անոր նկատմամբ, հակառակ անոր որ անիկա զգալի պակաս մը լրացնել կոչուած էր։ Զայն հիմնողները կը նկըրտէին «Ա. Կեսարիոյ մէջ ընթերցասիրութիւնը ծաւալել, որով եւ ինքնազարգացման ճաշակը արթնցնել, իրենց նախապաշարումը հալեցնել ու ուսման պասուքը յագեցնել, Կեսարիոյ հորիզոնէն տարբեր հորիզոններ պարզել, քաղաքակիրթ երկիրներ տանիլ եւ անոնց մթնոլորտներու կազդուրիչ օդէն ներշնչել եւ վերջապէս զարգացեալ ժողովուրդներու կեանքի պայմանները ուսումնասիրել տալ. Բ. ... վարժեցնել ժողովուրդը լումայ մը յատկացնել լրագրի, ինչպէս կ'ընէ իր հացին, *բաստըրմային* համար. Նամանաւանդ իր տափակ ու ցամաք կեանքը բարեխառնել ու Կիրակիները մէկ երկու ժամ լրագիրներու ընթերցանութեամբ զուարճալի ժամանց մը ընծայել եւ դեռ երիտասարդներէ ոմանք քաղաքակրթութեան առաջին եւ կեղծ շրջանին մոլեգին հոսանքներէն չտարուած, անոր մոգիչ ու աւերիչ հրապոյրներէն չյափշտակուած, երիտասարդին անձին վրայ բարոյական ներշնչում մը ընել» (Լէյաքիմ, Սուրհանդակ, թ. 76)։

Սակայն ինչպէս կը թուի սպասուած արդիւնքը չէ տուած, վասն զի յաճախողներն շատ քիչ էին, ինչպէս ականատեսը կ'ըսէ, «Ընթերցատունը բաց է, լրագիրները առատ, բայց ո՞ւր է մարդ: Արդեօք Կեսարացի երիտասարդը ո՞ւր կ'անցնէ Կիրակիները. — Շատեր այսպիսի հարցման մը, իրենց միշտ բացակայութիւնը պարտկելով, կ'առարկեն «ժամանակ չունինք», ու ասով չքմեղանալ կը կարծեն: Ժամանակի սով ... : ... «Ժամանակի սով չկայ, այլ մարդու սով» (Սուրհանդակ, թ. 76)։

Ասով հանդերձ կաղնիկաղն շարունակուած է այս հաստատութիւնը, որոշ չափով մը օգտակար ըլլալով համայնքին։

1899 Մարտ. 21ին ուսուցիչներու խնայողական միութիւնը և ընթերցատան միութիւնը միասնաբար կու տան կրկին նուագահանդէս մը, որուն կը յաջորդէր ներկայացումը «Բարեկենդանի Անկուտիները» թատերախաղին։ Այս հանդէսին ներկայ կ'ըլլայ նաև կառավարիչ Նազըմ փաշա։

Այսպէս Տրդատ եպ. Պալեան այդ դժնդակ օրերուն երբ ինչ որ Հայ հաւաքական կեանքի ու ընկերակցութեան գաղափարը կը խորհրդանշանէր, հալածանքի տակ էր, կը յաջողէր երկու օգտակար մարմիններ կազմել, և զանոնք զարգացնել։ Սակայն հետզհետէ աւելի կը սաստկանային ճնշումները և հալածանքները, որով Հայերն ալ կը պարտաւորուէին աւելի զգուշաւոր ըլլալ։



Վերջապէս եկաւ առեն մը որ ազգային ամէն գաղափար և ձեռնարկ եկեղեցիին ու դպրոցին չորս պատերուն մէջ ամփոփուեցաւ։

Ազգային գաղափարը հետեւաբար փրկողը եղաւ ուսուցչութիւնը, որ չդադրեցաւ հակառակ ամէն տեսակի հալածանքներու, մատաղ սերունդին ներշնչելէ ազգային զգացումներ, պատրաստելէ քաղաքացիներ, որոնք հակառակ զիրենք ուծացնելու և օտարացնելու ջանքերուն, Հայ մնալ ուզեցին և մնացին։

Իսկ Հայ յեղափոխական կազմակերպութիւնները՝ որոնք կը պահէին իրենց գոյութիւնը հակառակ լրտեսական ահարկու ցանցի մը և բացորոշ հալածանքներու, իրենց բոլոր սխալներով, իրենց բոլոր խակ և անհեռատես քայլերով — որոնցմով երբեմն աղէտալի հարուածներ բերին ազգին— իրենց գաղտնի բրոբականտով, զոհաբերութեան ոգին յաջողեցան արծարծուն պահել, մինչև 1908 Յուլիս 10/23ի Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութեան թուականը, որ փրկութեան լոյս մը եղաւ Թրքահայութեան համար, հնարաւորութիւն մը ընծայելով եւ դառնալու այն անել ճամբէն որուն մէջ մղած էին իր յեղափոխական վարիչները։

Օսմ. Սահմանադրութեան հռչակումը իսկապէս խոշոր յեղաշրջութիւն մը կը մտցնէր մանաւանդ գաւառի Հայոց կեանքին մէջ։ Հայերը պատրանքը ունեցան թէ փշրուած էին զիրենք ճնշող և կաշկանդող շղթաները։ Հետեւաբար յանկարծ առաջ եկաւ ոգեւորութիւն մը, որուն մէջ խոշոր բաժին մըն ալ ունէին նախ Հայ քաղաքական կուսակցութիւնները, որոնք իբր համագործակցական կազմակերպութիւններ հաւաքական ոյժեր առաջ կը բերէին և ապա միսիոնարներու և ազգային մրցակից հաստատութիւններու դաստիարակած ու պատրաստած սերունդները՝ որոնք ատակ էին հանրային գործունէութեան։ Ուստի 1908 Յուլիս 10ին յաջորդող օրերուն, տիրող ոգեւորութեան և խանդավառութեան մէջ, առաջին անգամ հրապարակ եկող ոյժերն եղան կուսակցականները, որ մինչև այն ատեն ստորերկրեայ գործունէութեամբ մը և հալածանքի մէջ միայն կրցած էին գործել։ Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն յետոյ արդէն տեսնուեցաւ թէ Կեսարիա, ամէնէն ճնշուած գաւառներէն մին, ինչպիսի պոռթկում մը կայան եղաւ։

Կեսարիոյ Հայերը, շնորհիւ իրենց բնածին արթնութեան, և մանաւանդ շնորհիւ Տրդատ եպ. Պալեանի դաստակերտ՝ Ս. Կարապետի բարձր. վարժարանէն և քաղաքին՝ Միացեալ Ուսումնարանէն հասնող երիտասարդներուն, անմասն չմնացին տիրող ոգեւորութենէն և կուսակցական կազմակերպութիւններու հետ, ծնունդ տուին նաև անոնց նախագաւիթը ըլլալու սահմանուած բազմաթիւ միութիւններու և ընկերութիւններու, որոնց անդրանիկը եղաւ Օսմ. Սահմանադրութեան հռչակման վաղորդայնին իսկ կազմուած (Յակոբ Գ. Զամուրեան, Արեւելք, 27 Օգոստ. 1908, թ. 6884) Հայ Ընթերցասիրացը, — որ «Ակումբ» կարճ անունով ճանչուած էր։

Այս միութեան հիմնադիրներն էին 25 երիտասարդներ։ Սակայն հետզհետէ ստուարացաւ, ամէն դասակարգէ ներկայացուցիչներով։ 25 հիմնադիր անդամները առջի օրէն աշխատութեան բաժանումի սկզբունքով 5ական հոգիէ բաղկացեալ հինգ մասնախումբերու

բաժնուեցան։ Այսպէս, 1. Քաղաքական, 2. Լսարանի, 3. Խմբագրական, 4. Ներկայացման և 5. Գրական միութեան։

Քաղաքական խումբը կը յաւակնէր հսկող հանդիսանալ կառավարութեան մօտ՝ իր յաճախակի բողոքներով և դիմումներով՝ արդարութեան գործադրութիւնը ապահովելու։ Լսարանի խումբը ամէն Կիրակի, եկեղեցիներու մէջ ժողովուրդին կը հրամցնէր կարող խօսողներու հայեցքները ամէն տեսակ նիւթերու վրայ։ Խմբագրականը՝ Գոլսոյ Թերթերուն օրն օրին ճշգրտօրէն կը տեղեկագրէր քաղաքին և շրջակայքի դէպքերը։ Գրական միութեան խումբն ամէն Կիրակի երեկոյին, ընկերութեան կեդրոնատեղին, Արզօղլուի տան մէջ, գրական հանդէսներ կը կազմակերպէր։ Ներկայացումներու մասնախումբը թատերական ներկայացումներ ժողովուրդին հրամցնելու գերը ստանձնած էր։

Նախապէս 25 հիմնադիր անդամներուն վրայ կը ծանրանար ամէն հոգ։ Հետզհետէ ստուարացող պատւոյ անդամները չսահմանափակելու համար թէ՛ գործունէութեան և թէ՛ այլ իրաւունքներու շնորհը 25երուն մէջ, հիմնադիր և պատւոյ անդամներուն մէջ հաւասարութեան յաջողութիւնը ձեռք բերին, աւելի նոր փուլի մը մէջ դնելով «Ընթերցասիրաց»ը։

Ընթերցատունը կեդրոնատեղիին մէջ՝ պատկառելի սրահ մը կը ներկայացնէր, իր ամէն տեսակ թերթերով և կահաւորումով։

Առաջին ոգեւորութեամբ դրամ և ջանք չէր խնայուէր, ամսական կանոնաւոր վճարումներէն զատ՝ անդամներ բացառիկ զոհողութիւններ ալ կը կատարեն (Մելքոն Աստուր, Բիւզանդիոն, 7 Յունուար, 1909, թ. 3726), սակայն ինչպէս կը թուի, առհասարակ մեր մէջ տեսնուածին պէս, այս առաջին եռանդը շուտով կ՛անցնի և հետզհետէ կ՛անշքանայ այս փայլուն սկզբնաւորութիւն մը ունեցող ընկերութիւնը որուն անունին դուն ուրեք կը հանդիպինք 1910էն յետոյ։

Նոյնպէս 1908 Յուլիս 10էն անմիջապէս յետոյ կազմուած է Կրթասիրաց Միութիւնը, որ 200 ոսկիի մօտիկ բաժանորդագրութիւն մը ապահովելէ յետոյ՝ անմիջապէս ձեռնարկեց անոք տղաքներու յատուկ մասնաւոր դպրոց մը բանալ երկու ուսուցիչներով և 100է աւելի աշակերտներով։ Միութիւնը կը հոգար ամէն դպրոցական ծախքերը և հագուստն ու կապուստը այդ հարիւր աղքատիկ աշակերտներուն (Մելքոն Աստուր, Բիւզանդիոն, թ. 3726)։ Այս ընկերութիւնը որ պատուաբեր երեւոյթ մըն էր դժբախտաբար շատ կարճ կեանք ունեցած է։ Իր դպրոցը յաջորդ տարին (1909) փակուած է (Բիւզանդիոն, թ. 3951)։

Կազմուած է նաև նոյն օրերուն Գինեբողաց Ընկերութիւն մը, որուն նպատակն էր ծաւալուն հանգամանք ստացած գինեմոլութիւնը արմատախիլ ընել ընդհանրապէս աղքատիկ դասակարգին և արբեցութեան աւերումներուն անգիտակ ընտանիքի հայրերու, երիտասարդներու մէջէն։ Օգտակար գաղափարը յղացուած էր այս անունով միութեան մը դրօշին տակ զինուորագրելու ստուար թիւ մը անդամներու, որոնք կու գային ամէն իրիկուն ընթերցմամբ պարապելու ընկերութեան կեդրոնատեղին, և լսելու շահեկան քարոզներ, բացատրութիւններ և ընդլայնումներ լրագրագրական այս և այն կտորին վերաբերեալ (Մելքոն Աստուր, նոյն)։



Խանդավառութեան այս շրջանին մէջ հիմնուեցաւ նաև Կիւմշեան Սանուց Միութիւնը, որ կազմուած էր Կիւմշեան վարժարանի նախկին սաներէ, մօտէն հետեւելու համար վարժարանին ուղղութեան և իրենց միջոցներով օժանդակելու համար վարժարանին տարեկան պիւտճէին։ Այս Միութիւնը կ՛աշխատէր նորանոր աղբիւրներ ստեղծել նիւթապէս զօրանալու համար և նպատակ ունէր ներկայացումներ տալ ի նպաստ վարժարանին, ուր 700 աշակերտ (Բիւզանդիոն, թ. 3726) կը յաճախէր։

Այդ օրերուն հիմնուած էր նաև Թրքախօսները հայախօս դարձնելու համար Հայախօսաց Միութիւնը, որ կազմակերպած էր Դաշնակցական ամէնէն յայտնի դէմքերէն Գաբրիէլ Թագւորեան (տես վերը, էջ 1116)։ Այս միութեան նպատակն էր հայերէն լեզուն ընդհանրացնել տաճկախօս բնակչութեան մէջ։ Ատենախօսութիւն, ներկայացումներ, ընթերցումներ կը կազմէին իրենց գործունէութեան ծրագիրը։



ԳԱԲՐԻԷԼ ԹԱԳՒՈՐԵԱՆ
(տես կենսագրութիւնը էջ 1203)

Այս և ասոնց նման ուրիշ շատ մը ընկերութիւններ և ակումբներ, որոնց յիշատակութեան թերեւս ես չեմ հանդիպած, բացուած 1908ին, փակուեցան 1909ին (տես Բիւզանդիոն, թ. 3951), Ատանայի ջարդին վաղորդայնին երբ Թրքահայութիւնը սարսուռը ունեցաւ զգալու թէ իր միամիտ ակընկալութիւնները որքան խախուտ և անկայուն էին։ Թերեւս այս ժողովուրդը ինքն իր գլուխ ձգուած և քաջ ծանօթ Թրքական մտայնութեան, իմաստութիւնը պիտի ունենար ինքն իր մէջ ամփոփուելու և արտաքին ցոյցերէ զգուշանալու, եթէ իրեն վարիչ-առաջնորդ ըլլալու յաւակնութիւնով ոտնքացող պորտաբ-գլուխ վարիչներ՝ գալիք աղէտներու այդ ազդարար ահազանգին նշանակութիւնը ուղիղ ըմբռնէին և ըստ այնմ շարժելու խոհեմութիւնը ունենային։ Ընդհակառակն անոնք չըմբռնեցին կացութիւնը, և Կիլիկիոյ եղեռնը նկատելով յետադիմական արարք մը՝ Սահմանադրութեան պաշտպան Ժէօն-Թուրքերու աւելի եռանդով փարեցան և անոնց միահետ դաշինքներ կնքելու պէս՝ չըսելու համար տխմարական՝ միամիտ յաւակնութիւնը ունեցան, և ժամանակաւոր ընդգրկումէ մը յետոյ նախկին մեծխօսիկութիւններու և ցուցամոլութեանց ետեւէ ելան։ Ժողովուրդն ալ ոչխարամիտ ու անտրամաբար, իր սոփեստ առաջնորդներուն հլու կամակատար, շարունակեց իր ուղին, և սիրեց քաղաքականութիւն ընել։ Այնպէս որ աւելի մեծ թուով խմբուեցաւ քաղաքական կուսակցութիւններու շուրջը, որոնց անդամագրուողներու թիւը շատցաւ։ Անոնց շուրջը համախմբուողները՝ ստուար մեծամասնութեամբ բախտախնդիրներ և գիրքի ու պաշտօնի մուրացկաններ էին։

Ամէնէն առաջ շատեր անդամագրուեցան Իթթիհատ եւ Թէրաքքըի, խառն Թուրքերու և Յոյներու հետ, սակայն շուտով անկէ հեռացան, Թրքական մտայնութեան մէջ ոչինչ փոխուած տեսնելով։ Մասնաւորապէս 1909ի Ատանայի դէպքերու ընթացքին Թուրքերու ցոյց տուած միտումը Կեսարիոյ Հայերն ալ ջարդելու և իթթիլաֆական կառավարիչ Ճէմալ պէյի մաքառումը այս տեսակ սպանդի մը տեղի չտալու համար, Հայոց համակրութիւնները աւելի Իթթիլաֆի կողմը դարձուցին։ Հետեւաբար անոնց համակիր Հնչակեանութիւնը՝ աւելի լայն ծաւալ գտաւ Կեսարիոյ մէջ ուր Դաշնակցութիւնը աւելի փոքրաթիւ էր։ Աւելի ուշ հոն կրցան ոտքի կռուան առնել Ռամկավարները։

Այսպէս երիտասարդութիւնը կը համախմբուէր կուսակցութեանց շուրջը և կը լծուէր քաղաքական գործունէութեան կամ աւելի եկեղեցիներու և դպրոցներու վարչութիւնները ձեռք բերելու կամ այս կամ այն պաշտօն յափշտակելու պայքարներու և կը մոռնար մշակութային ձեռնարկները, որոնք կ'անշքանային և կը կազմալուծուէին։

Նոյնիսկ կրթական գործը չարաչար կը տուժէր կուսակցական գործունէութեան պատճառով, վասնզի անոնք իրենց հետեւորդները շատցնելու համար նորահաս սերունդները կ'ուզէին շահիլ դպրոցական գրասեղաններու վրայէն։ Իբր մտաւորական և իբր գործիչ կուսակցութեան յարողները առ հասարակ ուսուցիչները ըլլալով կուսակցական պայքարը կը փոխադրուէր դպրոցէն ներս և կ'ունենար աղէտալի հետեւանք։

Արդէն տեսնուեցաւ թէ ինչպէս կուսակցական խմորումի մը հակահարուածը կրեց Ս. Կարապետի բարձրագոյն վարժարանը ուր աշակերտական ըմբոստութիւններ սարքուեցան դուրսէն եղած թելադրութիւններով։ Քաղաքի վարժարաններն ալ զերծ չմնացին այս տեսակ տագնապներէ։ Կուսակցական ուսուցիչներ կազմեցին Ուսանողական միութիւններ, որոնք դպրոցական անկարգութիւններու պատճառ եղան։

Այս կարգի ուսանողական միութիւններէն մին էր Դաշնակցական Յառաջդիմասէր Ուսանողական Միութիւնը որ կը հովանաւորուէր յայտնապէս Դաշնակցական ուսուցիչներէ որոնք այսպէս ուսանողները կը պատրաստէին կուսակցական կեանքի, վնասելով անոնց խաղաղ աշխատանքին և յառաջդիմութեան։ Դաշնակցականներու ուսանողական շարքերու մէջ սպրդիլը՝ անշուշտ նախանձը պիտի գրգռէր միւս կուսակցութիւններուն։

Հնչակեանք ալ ուրեմն այս գետնին վրայ աշխատութեան ձեռնարկեցին։

Հնչակեան երեք ուսուցիչներ, Օննիկ Եղիազարեան, Յովհաննէս Փօյաճեան և Յարութիւն Եաղլեան նախաձեռնարկ կ'ըլլան և կը յաջողին Միացեալ Ուսումնարանի վերջընթեր կարգի աշակերտներէն Յակոբ Խաչերեանը, Մանուէլ Պէյլէրեանը, Մինաս Քացախեանը, Կարապետ Մայիսեանը, Արամ Սա'ատէթեանը, Արամ Պետրոսեանը, և Հայկ Ուղուրլեանը իրենց կողմը շահիլ 1912ին և Ս. Դ. Հնչակեան Գլիւպի սրահին մէջ հիմնել Հնչակեան Ուսանողական Միութիւնը, որ տարին չբոլորած, 1913ին արդէն իր շուրջը հաւաքած էր 25ի չափ ուսանողներ։ Միութիւնը յետոյ կ'ունենայ իր ճիւղերը կամ հետեւորդները նաև Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին և Թալասի Ամերիկեան Գոլէճին մէջ։



Ուսանողութեան այսպէս երկուքի բաժնուիլը, իրենց գլուխ և քաջալեր ունենալով ուսուցչութիւնը, որ նոյնպէս կուսակցական պայքարի առարկայ կ'ընէր ուսանողութիւնը, ինչպէս շատ մը տեղերու, նոյնպէս նաև Կեսարիոյ մէջ ունեցաւ վնասակար հետեւանք։

Վահան Քիւրքճեան հաշտ աչքով չէր դիտեր Հնչակեան Ուսանողական միութիւնը, իբր Դաշնակցական՝ և կ'ուզէ զայն կազմալուծել։ Սակայն ինչպէս ըսի Հնչակեանք՝ Կեսարիոյ մէջ աւելի տարածուած ըլլալով, հակառակ Միացեալ Ուսումնարանի տնօրէնին գործադրած սեղմումներուն և ջանքերուն, Ուսումնարանին 80ի չափ ուսանողներուն մեծամասնութիւնը կը յարի Հնչակեան Ուսանողական միութեան, ստեղծելով այսպէս աններդաշնակութիւն մը և լարուածութիւն մը վարժարանին մէջ։

1913ի Ծնունդի արձակուրդէն անմիջապէս յետոյ, Ուսումնարանին տնօրէն Վահան Քիւրքճեան ուրիշ միջոց չի գտներ իրեն դէմ ստեղծուած ընդդիմադրութիւնը ընկճելու եթէ ոչ Հոգաբարձութիւնը համոզել որ իբր էֆքեարը ժըրքավիյէյէ սիւլիւք իտիպ թալապէկեանըն իսթիրահաթընը իխլալ էտէնլէր (կուսակցական գաղափարի հետեւելով ուսանողութեան անդորրութիւնը վրդովողներ) դպրոցէն արտաքսուի վերջնապէս Յակոբ Խաչերեանը իբր պարագլուխ, իսկ 5էն 15 օրերով առժամեայ արտաքսումի ենթարկուին Հնչակեան Ուսանողութեան միութեան անդամներէն Մանուէլ Պէյլէրեան, Մինաս Քացախեան, Հայկ Ուղուրլեան, Բարսեղ Մէլէմէթճեան և Կարապետ Մայիսեան։

Այս տնօրէնութիւնը պատճառ կ'ըլլայ յուզումի մը որ բոլոր դըպրոցներու մէջ արձագանգ կը գտնէ։ Հնչակեան ուսուցիչներ բողոք կը ներկայացնեն և իրենց գործը կը լքեն։ Միւս ուսուցիչները անոնց լքած գործը իրենք ստանձնելով կ'ուզեն շարունակել դասերը, երբ ուսանողութիւնը այս անգամ դասադուլ կը հռչակէ՝ դպրոց դառնալու համար պայման դնելով արտաքսուածներու վերադարձը։ Այսպէս կիրքերը կը յուզուին և աւելի քան մէկ ամիս դպրոցները կը մատնուին խանգարումի:

«Քիչ մնացած էր որ այս խնդիրը միջկուսակցական արիւնայեղութեանց պատճառ դառնար, բայց կուսակցական բարձր շրջանակները կրցան համաձայնութեան եզր մը գտնել, ընդունելով այնպիսի բանաձեւ մը որը թէ՛ գոհացում կուտար անիրաւուած ուսանողներուն եւ թէ՛ անխոհեմաբար վճիռ տուող Հոգաբարձութեան վարկը չէր վիրաւորեր» (Մանուկ Կարապետեան, Յուշեր Կեսարիոյ Հնչակեան կեանքէն, ՀՆՉԱԿԵԱՆ ՏԱՐԵԳԻՐՔ, 1932, էջ 67)։

«Միջկուսակցական արիւնայեղութիւն» սպառնացող այս դէպքը —ինքնին այնքան յատկանշական իր քանդիչ հանգամանքով— վերջ կը գտնէր արտաքսուածներուն դասադուլ հռչակողներուն հետ դպրոց մուտքով։

Ուսանողական այս միութիւնները՝ որոնք կուսակցականներ կը պատրաստէին կը սարքէին, վիճաբանական ժողովներ ու բանախօսութիւններ։

Ս. Դ. Հնչակեան Ուսանողական միութիւնը իր մէջ ունէր նուագախումբ մը որ կազմակերպած էր 1914ին Յովհաննէս Փօյաճեան (տես վերը, էջ 1232)։ Այս նուագախումբը փայլ կու տար հանդէսներու։

Ապահովաբար այսպիսի գոյն ունէր նաև Քնար անուն նուագախումբը որուն յիշատակութեան կը հանդիպիմ լրագրի մը մէջ 1913ին (Բիւզանդիոն, թ. 5178)։

Այս ուսանողական միութեանց իբր մաս կարելի է յիշատակել նաև մարզիկներու խումբերը, որոնք Կեսարիոյ մէջ ալ մարմին առած են, անշուշտ Կ. Պոլսոյ մէջ ծնունդ առած և մեծ ծաւալ գտած մարզական շարժման ազդեցութեան տակ։

Այսպէս 1914ին Ազգ. Միացեալ Ուսումնարանը ունէր իր մարմնամարզի խումբը, բաւական կանոնաւոր կազմակերպութեամբ, ինչպէս կը տեսնուի իրենց պատկերէն։



ԱԶԳ. ՄԻԱՑԵԱԼ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԻ ԽՈՒՄԲ

Ինչպէս Ուսանողական միութիւնները՝ կուսակցական բրոբականտին մէկ հետևանքն էին, անոր մէկ ուրիշ անխուսափելի արգիւնքն էին նաև այն հաւաքոյթները որոնք կը կազմակերպուէին կենդանի խօսքով առաջ տանելու կուսակցական քարոզչութիւնը և հետևորդներ շահելու համար։

Այս կարգի հաւաքոյթներ որոնք հին մշակոյթի ու զարգացման նուիրուած լսարաններու մէկ շարափոխեալներ էին, ունեցաւ նաև Կեսարիա, որոնց մէջ տեղւոյն վրայ բուսնող և դուրսէն եկող գործիչներ յաճախ կատարեցին ատենաբանութիւններ որոնք յաճախ պոռոտախօսութիւններ էին, իրենց կուսակցութեան ներբողը հիւսող, քիչ անգամ նպատակի մը և օգուտի մը ձգտող և յաճախ Հայը Հայուն կամ Թուրքը և Ռուսը Հայուն դէմ գրգռող։

Կուսակցական բրոբականտը ինչպէս որ դպրոցին մէջ քանդիչ դեր կատարած էր, հոն ստեղծելով ուսանողներու և ուսուցիչներու մէջ պայքար, նոյնպէս նաև արտաքին աշխարհին մէջ ծնունդ տուաւ անիմաստ պայքարներու, որոնց գլխաւորը եղաւ «բացուգոցի խընդիրը» որ բոլոր Թուրքիոյ Հայաբնակ քաղաքներուն մէջ իր տխուր



արձագանգը ունեցաւ և ազգամիջեան սակալի մարտնչումներու տեղի տուաւ նոյնիսկ եղբայրասպանութեան յանգելով՝ ինչպէս Իզմիր։

Կեսարիոյ մէջ ալ այս տգեղ ու բացարձակ անտեղի և այպանելի պայքարը իր արձագանգը ունեցաւ։ Նոյնիսկ շրջակայից մէջ ամէնէն խուլ անկիւնները, այս անօգուտ պայքարէն ազատ չմնացին։ Այսպէս 1911ին Վարդանանց տօնի օրը Թոմարզայի եկեղեցիին մէջ հանդէս կը կատարուի և Դաշնակցական Մարզպետ կը բանախօսէ, Հնչակեանք կ'ուզեն արգիլել զայն (Ազատամարտ, Թ. 542)։

Այս հակառակամարտութիւնները՝ որոնք յանուն կուսակցական հեղինակութեան կը մղուէին՝ իրենց տխուր անդրադարձութիւնը կ'ունենային համայնքին մէջ, ուր կուսակցութիւններ իրենց բանջունիական ծրագիրներուն իրագործումը կը հետապնդէին։ Ընկերվարութեան համար գետին չունեցող, գործարանատէր-դրամատէր, և հետևաբար բանուոր ու ընչազուրկ և կեղեքուող դասակարգեր չունեցող երկրի մը մէջ իրենց հեռաւոր նպատակները հետապնդելու առաջադրութեամբ աշխատեցան բանուորական կազմակերպութիւններ ընել։

Արդարև խակական բանջունիական էր այսպիսի գաւառի մը մէջ որ վաճառաշահ էր, սակայն գործարանային կեանք և աշխատանք գոյութիւն չունէր, իբր ընկերվարական ձեռնարկ երևան բերել, Մսագործներու (Գասապ) և Քէմիք օյաճ կանանց միութիւններ, ինչպէս ըրին Հնչակեան երկու ընկերներ, Մինաս Պետրոսեան և Կարապետ Զիլտեմեան, վասնզի իրականին մէջ անոնք գործաւորի հանգամանք չունէին, քանի որ իրենց գործը տեւական բնոյթ չունէր։ Ամառուան եղանակին, Յունիսէն մինչև Հոկտեմբեր, Պոլսոյ և արտասահմանի շուկաներուն համար ապուխտ պատրաստող բազմաթիւ տուներ — մեծ մասամբ Հայ — 15-20 հազար կով կը մորթէին։ Այս գործին համար կը վարձուէին այր մսագործներ (գասապ) և կին քէմիք օյունճուներ, որոնք գուցէ իրենց չարաչար աշխատանքին համապատասխան վարձք չէին ստանար։

Ահա այս ժամանակաւոր բանուորները կազմակերպելու գործն էր որ կը կատարէին երկու Հնչակեաններ, որոնցմէ Մինաս Պետրոսեան կը պատրաստէ նաև կանոնագրութիւն մը և երկու սէնտիքաներ գասապներու և օյունճու կանանց։

Նման ձեռնարկ մըն ալ եղած է պղինձի վրայ աշխատող արհեստաւորներու համար։ Ասոնք կուսակցական յաղթանակներ (!!) էին անշուշտ որոնցմով կը սոնքային մեր կուսակցական վարիչները. աւազի վրայ կառուցանելով շէնքեր, որոնք հեռու էին ազգին համար բարիք մը ապահովելէ և իրենց նպատակին ծառայելէ։ Ընդհակառակը անոնք ուղիղ համբէն մոլորած, կողմնակի անցքերու և անել բաւիղներու մէջ կը կորսուէին,



ՄԻՆԱՍ ՊԵՏՐՈՍԵԱՆ (ԱՍՈՒԿ)
(տես կենսագր. էջ 1229)

իրենց հետ քաշելով ժողովուրդին խանդավառ այլ սակայն անհեռատես ու յեղյեղուկ մէկ մասը, որ միամտօրէն կ'երթար ստուարացնել կուսակցութեանց շարքերը, բանկալներու շուրջը, դպրոցներու մէջը կամ եկեղեցիներու բակը կրկէս դարձնելու համար հակառակամարտութիւններու՝ քաղաքականութիւնը տիրացութեան վերածելով։

Կուսակցութիւնները՝ իրենց գտած քաջալերութենէն խրախուսուած հետզհետէ իրենց շրջանակը կ'ընդլայնէին և կը նկրտէին նոյնիսկ կիներէն իրենց համակիրներ ճարելու։ Կեսարացի Հայ կիները, մինչև այդ թուականը իրենց տան չորս պատերուն մէջ սահմանափակուած, դուրս կը քաշուէին իրենց արգելարան-բնակարաններէն և հանրային կեանքի խառնուելու կը կոչուէին։ Այսպէս Դաշնակցականներու ազդեցութեան տակ, Տիկ. Աղաւնի Սարգիսեանի Ատենապետութեամբ կը կազմուէր 1910ին Սանուհեաց Միութիւնը (Ազատամարտ, 17 Դեկտ. 1910, թ. 456) որ 1908էն յետոյ իգական սեռի առաջին միութիւնն էր Կեսարիոյ մէջ, որուն որքան կեանք ունեցած ըլլալը չեմ գիտեր։ Սակայն երբ այսպէս երիտասարդութիւնը կը մղուէր կուսակցական կեանքի և աւելորդ ուժասպառութեամբ մը ինքզինքն մաշեցնելով հանդերձ հարեւաններու ատելութիւնը կը գրգռէր — մանաւանդ Պալքանեան պատերազմէն (1912) յետոյ Հայկական խնդրոյն եւրոպական դիւանագիտութեան կողմէ արծարծուելուն հետեւանօք — անդին կը գտնուէին մարդիկ, որոնք բնազդաբար կարծես կը նախատեսէին ապագան և կ'ուզէին տարբեր ճամբով առաջանալ։

1909ի Կիլիկիոյ եղեռնը և անոր հետեւանօք յառաջ եկած յուսախաբութիւնը, կրցած էր գոնէ քիչեր աւելի իրատես դարձնել։ Այնպէս որ հակահոսանքը սկսաւ նաև Թրքահայոց մէջ ինչպէս պատահած էր 1905էն յետոյ Կովկասահայոց մէջ։ Սակայն կարելի չեղաւ կազմակերպուած և յաճախ խոստովանելի և անխոստովանելի շահերով իրարու կապուած կուսակցականներու դէմ պայքարիլ և անոնք իրենց անխորհուրդ ու կոյր առաջնորդի դերը շարունակեցին կատարել մինչեւ որ Ընդհ. պատերազմը առիթ ընծայեց Թուրքերուն լուծելու վրէժներու ամէնէն հրէշայինը և սոսկալին։ 1909ի եղեռնէն յետոյ երբ հակազդեցութիւնը սկսաւ ժողովուրդին մէջ, ժողովուրդին ուշադրութեան առարկան եղաւ իր ծնունդով և առաջադրութեամբ հակայեղափոխական կազմակերպութիւն մը, Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւնը, որուն Կիլիկիոյ կոտորածէն յետոյ ընձեռնած օժանդակութիւնը, և վերակազմուած Միացեալ Ընկերութեան իր բերած դրամական մեծ նպաստը, արդէն իրեն համար համակրութեան և սիրոյ մթնոլորտ մը ստեղծած էին, երբ իր մեծ առաքեալը Տոքթ. Նազարէթ Տաղաւարեան բոլոր Թուրքիոյ հայաբնակ վայրերը շրջելով, սկսաւ գրեթէ ամէն կողմ հաստատել մասնաճիւղեր։

Տրդատ եպ. Պալեան, հեռատես և խոհեմ առաջնորդ մը, անշուշտ ամէնէն կանուխ ըմբռնողներէն և գնահատողներէն մէկն է Հ. Բ. Ը. Միութեան գործը, ուստի կանուխէն ջանաց կազմակերպել Կեսարիոյ մէջ մասնաճիւղ մը, երբ Եգիպտոսի կեդրոնէն՝ իրեն — ինչպէս բոլոր Առաջնորդներուն — դիմում եղաւ։ Սակայն իր վերահաս մեկնումը արգելք մը եղաւ որ ինք կարենայ տեսնել մասնաճիւղին հաստատութիւնը։ Իր մեկնելէն յետոյ Օննիկ Գույումճեան և Գէորգ Ճամճեան երկու գլխաւոր դէմքերն են որոնք գործի գլուխ կ'անցնին, իրենց հետ



ունենալով ուսուցիչ Հմայեակ Ուղուրլեանը, որ մեծապէս օգտակար կ'ըլլայ նախնական աշխատութեանց մէջ։

Առաջին Հիմնադրական ժողովը կը գումարուի 21 անդամներով, 1910 Նոյեմ. 28ին (Բիւզանդիոն, թ. 4321) և կ'որոշուի Մասնաճիւղը հաստատուած հռչակել 1911 Յունուար 1ին (Ոսկեմասեան, էջ 109։

Հ. Բ. Ը. Միութեան Կեսարիոյ Վարիչ Մարմնին անդրանիկ անդամները կ'ըլլան.

Յարութիւն Եուսուֆեան՝ Ատենապետ
Գէորգ Ճամճեան՝ Ատենադպիր
Օննիկ Գույումճեան՝ Գանձապետ
Թ. Մնտիկեան՝ Խորհրդական
Գ. Գունտաքճեան »



ԳԷՈՐԳ ՃԱՄՃԵԱՆ
Հիմնադիրներէն մին
Հ. Բ. Ը. Միութեան
Կեսարիոյ Մասնաճիւղին
(Նահատակուած)

Նոյն տարուան Մայիս 25ին երբ Կիլիկիոյ Շնորհ. Կաթողիկոսը՝ Սահակ Բ., Կեսարիա կը ժամանէ, օգտուելով իր ներկայութենէն, մասնաժողովը Արամեան Վարժարանին մէջ կը սարքէ շատ փայլուն հանդէս մը, որուն ներկայ կ'ըլլան նաև Կաթոլիկ և Բողոքական Հայոց հոգեւոր պետերը և այդ առթիւ խօսուած ճառերու ընթացքին Սարգիս Սաղըրեան կը կարդայ Ն. Օծութեան կողմէ Միութեան Կեդրոնին ուղղուած գնահատական կոնդակին թուրքերէն թարգմանութիւնը։ Նոյն օրը, անդամներու թիւը կը հասնի 59ի։

Մասնաճիւղը շուտով կ'ունենայ իր յատուկ լսարան-ընթերցարանը, ինչպէս նաև Օժանդակ մասնախումբ մը որուն անդամ կը նշանակուին Սարգիս Սաղըրեան, Հմայեակ Ուղուրլեան, Յակոբ Գրուսալեան, Յակոբ Ամանեան և Մամաս Քէշիշեան։ Թէ՛ Վարիչ Մարմնին և թէ Օժանդակ Մասնախումբին ջանքերով, 1911ի վերջը անդամներու թիւը կը հասնի 134ի։

Մասնաժողովին անդամներէն ոմանք այլուր փոխադրուած ըլլալով, անդամական ընդհանուր ժողով կը գումարուի 1912 Յունուար 7ին, և նոյն մարմինը նոր ընտրութեամբ կը վերակազմուի հետեւեալ կերպով.

Գէորգ Ճամճեան՝ Ատենապետ
Կարապետ Ճամճեան՝ Փոխ-Ատենապետ
Մեսրոպ վրդ. Քէշիշեան՝ Ատենադպիր
Սարգիս Սաղըրեան՝ Փոխ-Ատենադպիր
Օննիկ Գույումճեան՝ Գանձապահ

Հաշուեքննիչ կը նշանակուի Գրիգոր Ալչըճեան։

Ատենապետը շուտով մեկնելու հարկադրուած ըլլալով, նոյն պաշտօնը առժամաբար կը վարէ Փոխ-Ատենապետը։

Այս նոր Վարիչ Մարմնին ամէնէն գործունեայ անդամները կ'ըլլան Հայ-Կաթոլիկներու Առաջ. Փոխանորդ Մեսրոպ վրդ. Քէշիշեան (տես պատկերը և կենսագրութիւնը էջ 1044) և Սարգիս Սաղըրեան որ մինչև վերջը եռանդով աշխատած է Միութեան համար, Կեսարիայէն յետոյ Մերսին և այժմ Բարիզ։

Կեդրոնը առանձին հոգածութիւն ցոյց կու տայ մանաւանդ Կեսարիոյ կրթական պէտքերուն և այդ նպատակով կը թելադրէ մասնաւոր նուիրատուութիւններ որոնց կարգին Գալուստ Կիւլպէնկեանէ կը ստանայ նպաստ մը որ կը յատկացնէ Կեսարիոյ աղջիկներու Արամեան վարժարանին։

1912 Մայիսին կը վերակազմուի նաև Օժանդակ Մասնախումբը, որուն անդամներէն Սարգիս Սաղըրեան անցած էր Վարիչ Մարմին և մնացած էին լոկ չորս հոգի, որոնց վրայ կ'աւելցուին Յարութիւն Պէօճէքեան, Վահան Քեահեաեան և Ստեփան Պարութեան։



ՍԱՐԳԻՍ ՍԱՂԸՐԵԱՆ
Գլխաւոր աշխատաւորը
Հ. Բ. Ը. Միութեան
կազմակերպութեան
ի Կեսարիա

Մասնաճիւղը նոյն ամսուն դարձեալ փայլուն հանդէս մը կը սարքէ, երեք Հոգեւոր պետերու նախագահութեամբ։

1913ի սկիզբը, Մասնաժողովը, իր վերակազմութեան առթիւ, կ'որոշէ 9ի բարձրացնել վարիչ անդամներու թիւը, երեք Հոգեւոր Պետերը միասին ունենալով իբր Նախագահ, որով վարիչ մարմինը կ'ստանայ հետեւեալ կազմը.

Խօսրով եպ. Պէհրիկեան
Անտօն եպ. Պահապանեան } Նախագահներ
Վեր. Քերովբէ Եագուպեան

Մեսրոպ վրդ. Քէչիշեան՝ Ատենապետ
Կարապետ Ճամճեան՝ Փոխ-Ատենապետ
Հմայեակ Ուղուրլեան՝ Ատենադպիր
Սարգիս Սաղըրեան՝ Փոխ-Ատենադպիր
Կարապետ Նէվրուզեան՝ Գանձապահ
Գէորգ Ճամճեան՝ Խորհրդական



ՀԱՃԻ ԿԱՐԱՊԵՏ ՃԱՄՃԵԱՆ
Անդամ Իտարէ Մէճլիսի եւ վաճառական պղինձի:
Ատենապետ ինչպէս Հ. Բ. Ը. Միութեան նաեւ Գաւառական Ընդհ. Ժողովի, եւ Ս. Կարապետի Բարձր. վարժարանի խնամակալութեան:
Կախաղան հանուած 15 Յունիս 1915ին:

Կը վերակազմուի նաև օժանդակ մասնախումբը, որուն անդամ կը նշանակուին՝ Յակոբ Մխճաւագեան (1), Յարութիւն Պէօճէքեան, Յովսէփ Տաղլարեան, Յակոբ Ճագմատարեան(2), Յակոբ Ամանեան(3), Յակոբճան Շիմշիրեան(4), Կարապետ Քիւբէեան, Անդրէաս Թէքէեան(5) Երուանդ Ֆրէնկեան (6)։

1913 Դեկտ. 23ին, անդամական նոր Ընդհանուր ժողով մը, յատկապէս սարքուած հանդէսէ մը ետք որ տեղի կ'ունենայ Արամեան վարժարանին մէջ, կը

(1)Տարագրեալ և վերապրող, այժմ Աղեքսանդրիա։ (2)Տարագրեալ Համա, վերապրող։ (3)Տարագրեալ Քէրէք, այժմ Կիպրոս։ (4)Տարագրեալ և վերապրող։ (5)Նահատակուած։ (6)Տարագրեալ Դամասկոս և վերապրող։



վերընտրէ Մասնաժողովը նոյնութեամբ։ Դիւանն ալ կը մնայ անփոփոխ։ Տարուան վերջերը, մասնաճիւղին անդամներուն թիւը կը հասնի 188ի։

Յաջորդ 1914 տարուան Մայիսին Մասնաժողովը կը տօնէ իր հիմնարկութեան տարեդարձը։ Յունիսին՝ Ջմմառ կը կոչուի Ատենապետ Մեսրոպ վրդ. Քէչիշեան, որուն մեկնումը կը կատարուի մեծ



ՎԵՐ. ՔԵՐՈՎԲԷ ԵԱԳՈՒՊԵԱՆ
Հայ Աւետարանականաց
Հոգեւոր պետը
(Տես իր մասին էջ 1052)



ԿԱՐԱՊԵՏ ՆԷՎՐՈՒԶԵԱՆ
Մեծահարուստ, եազմայի վաճառական, Կեսարացի. Հայ-Աւետարանական հասարակութեան երեւելիներէն, ինքնաբոյս, արթուն, զուարճախօս միտք մը: Ոգով բարի եւ ուղղամիտ, քաղաքական գործերէ միշտ հեռու մնացած, սակայն իր միամօր վաղամեռիկ որդին Լեւոն Դաշնակցութեան յարած ըլլալով, իրենց գործատան մէկ անկիւնը թաղուած ռումբը պատճառ կ'ըլլայ իր մահուան դատապարտութեան Պատերազմական Ատեանէն: Կախաղան բարձրացած 30 Յուլիս 1915ին:

պատիւով, և իրեն կը յաջորդէ Կարապետ Ճամճեան, իբր Ատենապետ և նոր անդամ կ'առնուի Արամ Մօստիչեան (Նահատակուած)։

Ընդհ. Պատերազմի յայտարարութեան հետ կ'ընդհատուի Կեսարիոյ Մասնաճիւղին, ինչպէս այս տեսակ բոլոր մշակութային և կրթական մարմիններու գործունէութիւնը։

Յաջորդ 1915 մահահոտ տարին, Վարիչ Մարմնին՝ ինչպէս մասնաճիւղին՝ անդամներէն շատերը, պիտի նահատակուէին կախաղանի վրայ, բանտերու մէջ կամ աքսորի ճամբաներու երկայնքը։

***

Երբ Կեսարիոյ կեդրոնին մէջ եռանդը ցոյց կը տրուէր դէպի կրթական և մշակութային մարմինները, 1908էն յետոյ շրջակայքը անտարբեր հանդիսատես չէին մնար։

Այնպէս կը խորհիմ թէ կազմուեցան կամ վերակազմուեցան թեմերու մէջ բազմաթիւ բոլորովին նոր կամ հինէն գոյութիւն ունեցող այլ սակայն բռնակալ ռէժիմին ճնշումներուն տակ կազմալուծուած Միութիւններ, աւելի կամ նուազ կենսունակ և տեւական կեանքով, որոնցմէ շատերուն յիշատակութեան իսկ չենք հանդիպիր դժբախ-

տարբար ապարդիւն ու կարճատեւ կեանք մը ունեցած ըլլալնուն համար։

Խանդավառութեան օրերու մէջ կազմուած այդ սակաւակեաց միութիւններէն միայն անունով ծանօթ են հետեւեալները, որոնք յիշուած կը գտնեմ ժամանակակից լրագիրներու, կամ անձերու կողմէ։

Ա. Անձնուէրներու Միութիւնը կազմուած Ֆէնէքէի մէջ 1909ին, որուն նպատակը եւ կազմութեան շարժառիթը եւ տխուր վախճանը արդէն բացատրելու առիթը ունեցայ (տես էջ 1173)։

Բ. Յառաջդիմասէր Երիտասարդաց Ակումբը կազմուած Էֆքէրէի մէջ։ Այս ընկերութիւնը մեծ զօրավիգ եղած էր գիւղին դպրոցին։ Ունէր ընթերցարան մը եւ բազմաթիւ վճարող անդամներ։ Սահմանադրութեան վաղորդայնին իսկ կազմուած այս ընկերութեան պաշտօնական բացումը կատարուած է 1908 Նոյեմ. 30ին եկեղեցւոյ մէջ փայլուն հանդիսութեամբ մը։ Այս ընկերութիւնը Տոքթ. Կարապետ Միասէրեանին պաշտօն տուած էր այցելելու աղքատներուն եւ դեղին գինը միայն ստանալու Ակումբէն։ Այս ընկերութեան ոյժը կը կազմէր Իզմիր, Ատանա եւ այլուր գտնուած Էֆքէրէցիներու նիւթական եւ բարոյական աջակցութիւնը (Մելքոն Աստուր, Բիւզանդիոն, թ. 3726)։

Գ. Ակումբը՝ կազմուած Նիրզէի մէջ (Նոյն)։

Դ. Ուսումնասիրաց Ընկերութիւն՝ կազմուած Թոմարզայի մէջ, երիտասարդներու կողմէ, նպատակ ունենալով նիւթական եւ բարոյական աջակցութեամբ բարձրացնել դպրոցները եւ նպաստել կրթութեան տարածման։ Ամերիկայի մէջ Թոմարզացիք կը կազմեն մասնաճիւղ մը եւ 1911ին ունէին արդէն 300 ոսկիի մօտ դրամագլուխ մը պատրաստ (Ազատամարտ, 1911 Ապրիլ 1, թ. 542)։

Այս եւ ասոնց նման ընկերութիւններ՝ Կեսարիոյ կեդրոնին մէջ կազմուած համանման ընկերութիւններու պէս ունեցած են գործունէութիւն մը որ հեռու էր յաճախ առաջադրուած նպատակին ծառայելէ։ Անոնք առաւելապէս ենթարկուած այս կամ այն կուսակցութեան ազդեցութեանը, աւելի մարզարանները կամ նախագաւիթները եղած են՝ կուսակցութիւններու, եւ երիտասարդութիւնը դէպի քաղաքականութիւն ընելու մղած են, առանց մեծ օգուտ մը ապահովելու։ Ասոր համար է որ, ինչպէս որ քաղաքին մէջ տարէցներ ու կուսակցական խելառութիւններէ եւ ազգախառն գործերէ զզուողներ, մեծ եռանդով փարած էին Հ. Բ. Ը. Միութեան, նոյնպէս նաեւ Կեսարիոյ վիճակին թեմերէն ոմանց մէջ չահագրգռութիւն մը տեւնուեցաւ Միութեան նկատմամբ։

Այսպէս Ֆէնէսէ, որ կուսակցականներու համար զօրաւոր կայան մը եղած է, կանխած է նոյնիսկ Կեսարիան, 1910 Յունիս 8ին կազմելով տեղական մասնաճիւղ մը, որուն նախաձեռնարկն էր տեղւոյն վաճառականներէն Սահակ Տէր-Գրիգորեան։ Այս մասնաճիւղին անդրանիկ վարիչ մարմինը եղած է.

Կարապետ Գալճեան՝ Ատենապետ
Սահակ Տէր-Գրիգորեան՝ Ատենադպիր
Նազար Իսկէնտէրեան՝ Գանձապահ
Միքայէլ Գալֆայեան՝ Խորհրդական
Յարութիւն Բալաեան՝ Խորհրդական





ՖԷՆԷՍԷԻ ՏԵՂԱԿԱՆ ՄԱՍՆԱԺՈՂՈՎ
1. Յ. Գալայճեան (Ատենապետ), 2. Յակոբ Գույումճեան (Ատենադպիր)
3. Յ. Վաներեան (Գանձապետ)

1913ի սկիզբները Ատենապետը կը մեռնի եւ անոր տեղը նոյն պաշտօնին համար կ'ընտրուի Յովհաննէս Թորոսեան։

Այս Մասնաճիւղը, շուտով իր անդամներուն թիւը կը հասցնէ 66ի, սարքելով փայլուն հանդէսներ։

1913 Յուլիս 3ին, մասնաժողովը կը վերակազմուի հետեւեալ կերպով.

Յակոբ Դալայճեան՝ Ատենապետ
Մ. Յակոբ Դուլումճեան՝ Ատենադպիր (ողջ Կ. Պոլիս)
Յակոբ Վաներեան՝ Գանձապետ
Կարապետ Տատուրեան՝ Խորհրդական
Միքայէլ Դալֆայեան՝ »
Յովհաննէս Թորոսեան՝ »
Տիգրան Քէլէշեան՝ »

Հմայեակ Ուղուրլեան պատերազմի շրջանի վարիչ մարմինը կը կազմուէր հետեւեալներէ.

Մ. Յակոբ Գալայճեան՝ Ատենապետ (Նահատակուած)
Յովհաննէս Թորոսեան՝ Ատենադպիր (ողջ Կ. Պոլիս)
Մ. Յակոբ Վաներեան՝ Գանձապետ (Նահատակուած)
Կարապետ Մինասեան՝ Խորհրդական (ողջ Իսկէնտէրուն)
Միքայէլ Միքայէլեան՝ (մեռած տարագր. մէջ)
Նազար Սարօղլանեան՝ (մեռած տարագր. մէջ)
Սարգիս Տէր Գրիգորեան՝ (ողջ Հալէպ)
Յարութիւն Բալայեան՝ (ողջ Եգիպտոս)

Խաչատուր Գավլաքեան՝ (†)
Յ. Բառնաբասեան՝ (†)
Ֆէնէսէի Մասնաճիւղը մինչև 96 անդամ կ'ունենայ (Ոսկեմասեան, էջ 112)։

Իսկ Կեսարիոյ կեդրոնին մէջ Հ. Բ. Ը. Միութեան մասնաճիւղը հաստատուելէն յետոյ, նախաձեռնութեամբ նոյն կեդրոնին և Միութեան ամէնէն գործօն անդամներէն և անոր տարածիչներէն Հմայեակ Ուղուրլեանի, 1912 Յուլիս 11ին կը կազմուի Էվէրէկի մասնաճիւղը հետեւեալ վարիչ մարմինով (Ոսկեմասեան, էջ 112).

Մ. Նշան Եուսուֆեան՝ Ատենապետ (Նահատակուած)
Յակոբ Մելէքեան՝ փոխ-Ատենապետ (Նահատակուած)
Խաչատուր Տէր-Թորոսեան՝ Ատենադպիր
Մանուկ Վէրտեան՝ Գանձապետ
Միհրան Քէօլէեան՝ Խորհրդական
Աստուր Կէլտէրեան՝ »
Մերկերիոս Աչուկեան՝ »

Իսկ ըստ Հմայեակ Ուղուրլեանի 1915ին՝ պատերազմի ատեն ունէր սա կազմը.

Մ. Նշան Եուսուֆեան Ատենապետ (Նահատակուած)
Յակոբ Մելէքեան Ատենադպիր (Նահատակուած)
Մանուկ Վերտեան Գանձապետ (Նահատակուած)
Մերկերիոս Աչուկեան Խորհրդական (վերապրող Եգիպտոս)
Եաղուպ Ֆուրունճեան Խորհրդական (Նահատակուած)
Մոնդգին (?) Վիլեան » »

Այս մասնաճիւղը ունէր 28 անդամներ։

Նոյնպէս Հմայեակ Ուղուրլեանի նախաձեռնութեամբ և ջանքերով կը կազմուի Թոմարզայի մասնաճիւղը որուն Վարիչ Մարմնոյն անդամներն էին.

Յարութիւն քհ. Տէր-Կարապետեան՝ Ատենապետ
Եղիա Մ. Պօղոսեան՝ Ատենադպիր
Յարութիւն Տէր-Յովհաննէսեան՝ Գանձապահ
Հաճի Պօղոսեան՝ Խորհրդական
Սիմոն Մըղըրըսեան՝ »

Կուսակցականներու այս կեդրոնին մէջ միայն 10 անդամներ կ'ունենայ առաջին օրէն սկսեալ (Ոսկեմասեան, էջ 112)։

Նոյնպէս 10ական անդամներ ունեցած են Ինճէ-Սուի և Զօմախլուի մասնաճիւղերը, որոնք դարձեալ Հմայեակ Ուղուրլեանի նախաձեռնութեամբ կազմուած էին, առաջինը 1912 Օգոստոսին և երկրորդը 1913 Յունուարին։ Ինճէ-Սուի մասնաժողովին անդամներն էին՝

Յովակիմ Մկրտիչեան՝ Ատենապետ
Արամ քհ. Անջիկեան՝ Ատենադպիր
Փանոս Փէնտեան՝ Գանձապահ
Մուրատ Գայաեան՝ Խորհրդական
Մանուկ Յովակիմեան՝ »

Իսկ Զօմախլուի մասնաճիւղին վարիչ մարմին կ'անդամակցէին՝

Ներսէս քհ. Ներսէսեան(1)՝ Ատենապետ

(1) Տես իր մասին վերը էջ 845 և 1221։



Դալուստ Հաճի Յակոբեան՝ Ատենադպիր (վերապրող)
Հայկազուն Խաչիկեան՝ Գանձապահ
Նշան Օմարլըեան(†)՝ Խորհրդական
Կարապետ Էլիքիւչիւքեան՝ »
Համբարձում » (†)՝ Գանձապետ
Աստուր Սուքիասեան (†)

Այսպէս այս մեծ կազմակերպութիւնը հոն գտած էր իր արժանաւոր տեղը և ապահովաբար անիկա հետզհետէ աւելի մեծ ծաւալ պիտի գտնէր, երբ վրայ հասաւ Ընդհանուր պատերազմը և չքացուց ամէն ինչ։

## ԺԱ.

## ՄԱՄՈՒԼ ԵՒ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Թուրքիոյ հայութեան վարչական կեդրոնը՝ Կ. Պոլիս, հետզհետէ դարձաւ Արեւմտեան Հայոց մտաւորական շարժման վառարանը։

Ուսումնական վերազարթման առաջին ազդանշանը թէև տրուած էր Հայաստանի մի քանի կարեւոր վանքերէն, սակայն շուտով անիկա եկած ապաստան գտած էր Կ. Պոլսոյ մէջ ուր աւելի մեծ յարմարութիւններ և դիւրութիւններ կային։

Հոն կեդրոնին մէջ գեղեցիկ զարգացում ու բարգաւաճում մը ստացած էին մտաւորական, գրական ձեռնարկները և կրթական-ուսումնական աշխատութիւնները, օրինակ հանդիսանալով գաւառներու որոնք իրենց կարգին ճիգեր ու ջանքեր ըրին Կ. Պոլսոյ նմանելու և օգտուեցան մայրաքաղաքին շարժումէն ու փորձառութենէն։ Հետեւաբար, մտաւորական և գաղափարական ամէն շարժում որ Կ. Պոլսոյ մէջ ծնունդ առած է աւելի կամ նուազ չափով մը, արձագանգ գտած է նաև ներքին գաւառներու մէջ։

Այս մտաւորական և գաղափարական ձեռնարկներու կարգին անշուշտ մեծ տեղ մը ունէր նաև լրագրութիւնը, որուն առաջին կայանը եղաւ Կ. Պոլիս։

Իբր գաղափարի տարածման գործի և միջոց, անիկա անգամ մը Հայ կեանքին մէջ գործօն ազդակ մը դառնալէ յետոյ, ունէր կատարելիք դեր մը, որ արդարև ան կատարեց, խմորումի, փոխանցումի և փթթումի իրարու յաջորդող, ինչպէս նաև արտաքին հալածանքի և ներքին ու թագուն գործունէութեան շրջաններուն մէջ։

Անցեալ դարուն երեսունական թուականներէն սկսեալ մինչև անոր 80ական թուականները, յիսնամեայ շրջանին մէջ երբ Հայերը ամէն ազատութիւն կը վայելէին, գաւառի հայերը, կրթական և մտաւորական մարզերու մէջ ճիգեր կ'ընէին Կ. Պոլիսը ընդօրինակելու՝ հնար եղածին չափ։

Գիրքերը և լրագիրները, իբր մտաւորական ձեռնարկներ, որոնք կեդրոնը կ'արտադրէր, ազգային ընդհանուր զանգուածին բարոյական, նիւթական և մտաւորական զարթման համար չէին կրնար այս ընդհանուր կանոնէն բացառութիւն կազմել։ Սակայն գիրք կամ լրագիր տպելու համար անհրաժեշտ էր նախ ունենալ տպարաններ որոնց

հաստատութիւնը գաւառներու մէջ մեծ դժուարութիւններ կը ներկայացնէր։

Արդարև տպարաններու գոյութիւնը կապուած է կարգ մը նիւթական և բարոյական պայմաններու, որոնք գաւառական քաղաքներու մէջ ապահովել կարելի չէր, մանաւանդ ասկէ առաջ, երբ չկային հիմակուան պէս հաղորդակցութեան միջոցներ։

Տպարանները բազմապահանջ հաստատութիւններ են, և չեն կրնար կազմակերպուիլ մէկ օրէն միւսը ամէն տեղւոյ մէջ։ Անոնք ունին մեքենական մաս մը, որ տեղական միջոցներով չի կրնար հայթայթուիլ և սովորաբար արտասահմանէն կը բերուի և դիւրութեամբ տեղէ տեղ չի փոխադրուիր։

Դարձեալ այդ մեքենաները լարել և վարել բաւական խնդիր մըն է։ Տպագրական տառերը գաւառի մէջ պատրաստել շատ աւելի դժուար է և այս պատճառով՝ կա՛մ Եւրոպայէն կա՛մ Կ. Պոլիսէն կ'առնուին և կը ղրկուին։

Տպագրութեան թուղթը, մելանը և ուրիշ նախնական նիւթերը, փոխադրութեան դժուարութիւններու պատճառով աւելի սուղ կ'արժեն գաւառներու մէջ։ Իսկ գրաշարներ, մեքենավարներ և տպարանի աշխատաւորներ բնական է թէ հոն կրնան փորձառութիւն ձեռք բերել ուր տպարաններ գոյութիւն ունին և տպարաններ չգտնուած տեղեր՝ անոնք պիտի բերուին ուրիշ վայրերէ և բնական է թէ աւելի առատ վարձատրութեան իրաւունք պիտի ունենան։

Այս բոլոր դժուարութիւնները աչքի առջև ունենալով շատեր նախամեծար պիտի համարէին, այս ամէն դժուարութիւններէն զերծ միջավայրի մը մէջ հիմնել իրենց տպարանները և իրենց տպագրած գործերը ցրուել ո՛չ միայն գաւառները այլ աշխարհի ամէն կողմերը, ուր որ Հայ կայ։ Մանաւանդ նկատելի է որ Հայերը ո՛չ մէկ գաւառի մէջ այնքան զարգացած հոծ զանգուած մը ունէին անցեալին մէջ, միայն իրենց բաւելու չափ գործունէութեամբ մը ապահովելու համար տպարան մը։ Հետևաբար այս տեսակ հաստատութիւն մը պարտաւորուած էր իր յոյսը դնելու ո՛չ թէ միայն մէկ գաւառի գրել-կարդալ գիտցող հայութեան վրայ, այլ նաև պարտաւոր էր յաճախորդ փնտռել դրացի գաւառներու և հեռաւոր երկիրներու հայութեան մէջ։

Այս պատճառներով է որ տպարանները մասնաւորապէս Կ. Պոլսոյ մէջ անբաղդատելի կերպով բազմաթիւ եղած են։

Կ. Պոլսոյ մէջ Աբգար դպիրէն սկսեալ մինչև մեր օրերը աւելի կամ նուազ երկարակեաց, 120էն աւելի Հայ տպարաններ գործած են, որոնց դէմ միայն Իզմիրի մէջ 15ի չափ տպարաններ կը յիշատակուին։ Իսկ Թուրքիոյ ուրիշ քաղաքներու մէջ միայն հազուագիւտ բացառութիւններ են անոնք որոնք տպարան ունեցած են։

Լրագրութիւնը՝ որուն գլխաւոր աջակիցն է տպարանը, նոյնպէս գաւառներու մէջ չէ կրցած գործել վասնզի տպարաններ կազմակերպելու համար դիւրութիւններ չկային։

Ինչպէս յայտնի է Կ. Պոլսոյ մէջ առաջին անգամ հայերէն լրագիր հրատարակուիլ սկսած է 1832ին, կամ աւելի ճիշդ 1840ին՝ Թանզիմաթի հրատարակութեան վաղորդայնին, վասնզի 1832ին հրատարակուած Լրոյ Գիրը կամ Թագվիմի Վագային հայկական ձեռնարկ մը չէր այլ Օսմ. պետութեան կողմէ իբր պաշտօնաթերթ կատարուած հրատարա-



կութիւն մը։ 1840ին է որ առաջին անգամ Հայ մը կը հրատարակէր Ազդարար Բիւզանդեանը իբր ազգային լրագիր։

Արդ դիտելի է որ առաջին երեսնամեայ շրջանին, այսինքն 1832էն 1862, ուր Հայերը կը վայելէին կատարեալ ազատութիւն ու մտաւորական և քաղաքակրթական ամէն ձեռնարկի համար կառավարութենէն քաջալերութիւն՝

Կ. Պոլսոյ մէջ 26 պարբերական
Զմիւռնիոյ » 10 »
Նիկոմիդիոյ » 1 »
Վանայ » 1 » լոյս տեսած են։

Իսկ լրագրութեան Հայոց մէջ սկզբնաւորութենէն այսինքն 1794էն մինչև 1894, հարիւրամեայ շրջանին մէջ Թուրքիոյ բոլոր սահմաններուն մէջ հրատարակուած պարբերականներուն համեմատութիւնը սա է։ Կ. Պոլիս՝ ունեցած է 77 հատ լրագիր կամ հանդէս, Զմիւռնիա՝ 16 և Վան, Մուշ, Բալու, Նիկոմիդիա, Արմաշ, Երուսաղէմ, Սեբաստիա, Անդրիանուպոլիս, Հալէպ, Կարին, Պրուսա, Ատանա միայն մէկ մէկ հատ։

Ասիկա շատ պերճախօս կերպով ցոյց կու տայ թէ գաւառներու մէջ որքան դժուարութիւններ կային տպարաններու կազմակերպութեան համար, մասնաւորապէս հաղորդակցութեանց շատ նախնական վիճակի մը մէջ գտնուելուն պատճառով։

Գաւառներու այս տեսակ ձեռնարկներու անպատրաստ ըլլալը յայտնի ըլլալով, գերազանցապէս գաղափարական մի քանի մարդիկ անձնուիրութեամբ յանդգնած են գաւառի մէջ տպարան հիմնելու գաղափարը յղանալ և գործադրել, առանց սակայն տեւականացնել կարենալու իրենց գործը, որ կամ փճացած է կամ դարձեալ կեդրոն ապաստանած։ Անհատական այս ձեռնարկներէն զատ ազգային հաստատութիւններու ծոցին մէջ հիմնուած են մի քանի տպարաններ, որոնցմէ ոմանք կրցած են տեւական կեանք ունենալ։

Կեսարիա իր թրքախօս բնակչութեամբ թերևս ամէնէն նուազ յարմարութիւններ ունեցողներէն մին նկատուած է կրթական և մտաւորական ամէն կարգի շարժումներուն համար, սակայն Կեսարացիք հակառակ իրենց թրքախօսութեան ազգային միութենէն երբեք ուծացած չեն և ինչպէս կրթական գործի մէջ անոնք առաջին գիծին վրայ կանգնողներէն եղած են, նաև մամուլի և տպագրութեան մասին ուրիշ գաւառներէ ետ չմնալու համար ամէն ձեռնարկ ըրած են, զարմանալի կորովով մը որ կարելի չէ չգնահատել։ Արդարև Կեսարացւոց նկարագրին հետ անհաշտ պիտի ըլլար որ անոնք տեսնէին բողբոջումը տպարաններու Երուսաղէմի, Վարագի, Մշոյ Ս. Կարապետի, Արմաշի և նոյնիսկ Բալուի Քաղցրահայեաց Ս.Աստուածածին վանքերուն մէջ, և չփափաքէին իրենք ալ իրենց բազմադարեան Ս. Կարապետի մէջ ունենալու տպարան մը։

Արդարև 1861ին Կեսարացիք կը ճարտարուրին ունենալու համար իրենք ալ տպարան մը, նոյն տարին 16 Ապրիլին հիմնելով Ուսումնասիրաց Ընկերութիւն մը որ նպատակ ունէր ինչպէս ըսի (վերը էջ 1252) տպարան մը հիմնել դրամագլուխ մը գոյացնելէ յետոյ։

Դժբախտաբար այս ծրագիրը չկրցաւ իրագործուիլ։ Սակայն այս փորձն իսկ ցոյց կու տայ թէ Կեսարացիք որքան եռանդ ունէին,

հակառակ այնքան գէշ դասաւորուած պայմաններուն որոնք զիրենք կը շրջապատէին։

Դրութիւնը՝ դժբախտաբար հետզհետէ աւելի վատթարացաւ, երբ Հայ և Թուրք ժողովուրդներուն միջև խրամ բացուեցաւ և Հայը կասկածելի տարր մը նկատուիլ սկսաւ։ Այս ժամանակամիջոցին անկարելի էր որ Կեսարիոյ Հայերը կարենային խորհիլ Հայ տպարանի մը հիմնարկութեան վրայ, վասնզի Համիտեան վարչաձեւին ամէնէն մեծ սարսափն էր մամուլը։

Գալով լրագրութեան, առանց տպարանի անոր վրայ խորհիլ թերեւս ծիծաղելի նկատուի, սակայն ուշագրաւ է որ հայաբնակ շատ մը քաղաքներու մէջ տպարաններու հաստատութենէն առաջ հրատարակուած են ձեռագիր կամ խմորատիպ թերթեր, որոնք սահմանափակ շրջանակի մը մէջ գէթ գործօն դեր մը կատարած են։

Այսպէս 1840ական թուականներուն Նիկոմիդիոյ և շրջակայ գիւղերու մէջ ձեռագիր մէկէ աւելի թերթեր խմբագրուած են, եռանդուն երիտասարդներու ձեռքով։ Նոյնպէս, 1848ին Տրապիզոնի մէջ հրատարակուած է Հայաստան ձեռագիր թերթը (տես Վիքթոր Լանկուա, Revue de l'Orient, 1863, Avril-Mai).

Ամենամեծ հաւանականութեամբ նոյնը պատահած է նաև ուրիշ գաւառներու մէջ, ուր փորձեր եղած են, այս տեսակ ձեռագիր թերթերու հրատարակութեան, որոնք տպագիր հրատարակութեանց առաջապահները ըլլալու կոչուած էին։ Սակայն այդ բարեշրջումը առանց ողջունելու հասած են Համիտեան ռէժիմի հալածանքները և խստութիւնները և կասեցուցած այդ շարժումը որուն գլխաւոր օրօրանը դպրոցն էր և մշակողները՝ դպրոցական պատանիներ, որոնք կ. Պոլսոյ երիտասարդ-ուսուցչականներու ընդօրինակիչները կը հանդիսանային իրենց սահմանափակ միջոցներովը մամուլի ապարէզ նետուելով։ Արդարև գաւառներու մէջ այս տեսակ հանդէսներ — մեծ մասամբ տղայական— խիստ շատ եղած են։ Կեսարիոյ մէջ ալ ապահովաբար անոնցմէ որոշ թուով պէտք է խմբագրուած ըլլայ, սակայն ինչպէս բոլոր միւս քաղաքներու նոյնպէս Կեսարիոյ մէջ անոնց գոյութիւնը մոռցուած է։ Բիւզանդ Քէչեան, ապագայ մեծ հրապարակագիրը, իր յիշատակներուն մէջ կ'ըսէ թէ տակաւին մանուկ, Կեսարիոյ վարժարանին մէջ այսպիսի ձեռագիր լրագիր մը հրատարակելու նախափորձը ըրած է։ Անշուշտ իրմէ առաջ և իրմէ յետոյ ուրիշներ նմանօրինակ փորձեր ըրած են։

Համիտեան խստութիւնները ջնջեցին ինչ որ դպրոցէն դուրս ալ կը վերընձիւղէր և ծիլեր կ'արձակէր։ Սակայն դպրոցական պատանիներ —երազող հոգիներ— առանց նկատի առնելու ժամանակը և կացութիւնը, շարունակեցին ինչ որ արդէն իրենց նախորդները ըրած էին, միայն այս անգամ դպրոցին չորս պատերուն մէջ սահմանափակուած մնալու պայմանով։

Դպրոցական պատանիներու խմբագրութեամբ լոյս տեսած հանդէսները՝ կոչուած էին դպրոցէն դուրս ալ դեր մը կատարելու եթէ Համիտեան ռէժիմը իր հիրաններ ցոյց չի տար գաւառներու մէջ կրթական լուրջ շարժում մը սկսելէն անմիջապէս յետոյ։ Ամերիկեան Գոլէճներու հիմնադրութենէն և Միացեալ ընկերութեան ոգեւորեալ գործունէութեան արգասիքները տեսնուելէն յետոյ էր որ կարելի



պիտի ըլլար գաւառներէն սպասել լուրջ շարժում մը, որ սակայն չկրցաւ մարմին առնել, վասնզի ճիշդ այդ պահուն կառավարութեան խստութիւնները արգելք ըլլալ սկսան ունէ մտաւորական-գրական գործունէութեան։ Այսպէս, հազիւ թէ գաւառներու մէջ կրթական շարժումը սկսած և անոր արդիւնքները զգալի ըլլալու օրերը եկած էին երբ հարուածը հասաւ և սպաննեց ամէն շարժում։

Միայն օտար դրօշի տակ ապաստանած մի քանի կրթ. հաստատութիւններու մէջ, մասնաւորապէս Ամերիկեան Գոլէճներու մէջ, Հայ ուսանողներ իրենց բացառիկ դիրքին առաւելութենէն օգտուելով, կրցած են յանդգնիլ շարունակել ձեռագիր կամ խմորատիպ պարբերականներու խմբագրութիւնը։

Կեսարիոյ շրջանին մէջ կային իբր օտար հաստատութիւններ միայն քաղաքին Ցիսուսեանց և Թալասի ամերիկեան վարժարանները, ուր կրնային Հայ տղաքներ բաւական ապահովութեամբ ձեռագիր լրագիրներ խմբագրել։

Մեր ձեռքը հասած պատկեր մը ցոյց կու տայ խմբագիրները և գրագիրը «Ցիգրիս» խմորատիպ շաբաթաթերթին որ 1907ին արդէն կը հրատարակուէր եթէ ոչ 1908էն յետոյ։



Եթէ թրքական կառավարութեան սեղմումները գոյութիւն չունենային, անխուսափելիօրէն որ Կեսարիոյ երիտասարդութիւնը պիտի ներկայացնէր բոլորովին տարբեր պատկեր մը, վասնզի դըպրոցներու զարգացումէն և մասնաւորապէս Ս. Կարապետի բարձր. վարժարանին հաստատութենէն յետոյ, յեղաշրջուած էր Կեսարիոյ մէջ Հայ կեանքը, պատուական երիտասարդութիւն մը հասած ըլլալով։ Այս արդիւնքը Կեսարացիք ձեռք բերած էին իրենց միջոցներով, առանց ուրիշ տեղէ մը աջակցութիւն մը գտնելու։ Բայց

հազիւ թէ Կեսարիա ճաշակը ստացած էր կրթութեան և ուսման երբ վրայ հասան Համիտեան ռէժիմի խստութիւնները, որոնք կատարեալ մեռելութեան մատնեցին գաւառներու մտաւորական կեանքը և կրթական շարժումը, եթէ ոչ նախաձեռնարկ կեսարացիք, որոնք հայատառ թրքաբարբառ գրականութիւն մը ստեղծեր էին իրենց համար առաւելապէս Կ. Պոլսոյ մէջ և մենտորի դեր կը կատարէին ուրիշ թրքախօս գաւառներու, բնական է իրենց գաւառին մէջ ալ պիտի ջանային մամուլ և տպագրութիւն ստեղծել, սակայն չկրցան։ Ուստի, ինչպէս ուրիշ գաւառներու Հայերն, իրենց բոլոր ուշադրութիւնը կեդրոնացուցին դպրոցներու վրայ, որոնք աշխատեցան զերծ պահել համատարած հալածանքէն և ասով գէթ ազգային ոգին պահպանել, և առաջ տանիլ կարելի եղածին չափ կրթական գործը, եկեղեցիներու հովանիին տակ։

Հետեւաբար այս մեռելութեան օրերուն գաւառի դպրոցները՝ հանդիսացան մտաւորական-գաղափարական կեանքի օճախներ և իրենց շուրջը համախմբեցին ազգին ապագային յոյսով աշխատող ույժերը, որով ազգին ներքին կենսունակութիւնը պահպանուեցաւ։

Եւ երբ 1908ին Օսմ. Սահմանադրութիւնը վերահաստատուեցաւ, Հայերը անպատրաստ չէին օգտուելու համար այդ խաբուսիկ ազատութեան ընձայած դիւրութիւններէն։

Հայերը պատրանքը ունեցան թէ փշրուած էին զիրենք ճնշող ու կաշկանդող շղթաները, հետեւաբար յանկարծական ոգեւորութեամբ մը, սկսան աշխատիլ։ Այս եռանդուն գործունէութեան մէջ խոշոր բաժին մըն ալ ունէին կուսակցականները. որ մինչև այն ատեն ստորերկրեայ գործունէութեամբ մը և հալածանքի մէջ միայն կրցած էին գործել։

Այս տեսակէտով ամէնէն աւելի արթուն ու ամէնէն աւելի ընդարձակ և գործունեայ վայրը հանդիսացած է Վան, որուն Հայ բնակիչները հակառակ իրենց կեդրոնէն հեռաւորութեան՝ խիստ ընդունակ, և մոքով արթուն, և միեւնոյն ատեն նորութեանց սիրահար և ծայրայեղութեանց հակամէտ ժողովուրդ մը եղած են։

Ասոր համար է որ Վան գլխաւոր կայանը եղած է Հայ յեղափոխութեան և տուած է գաղափարի հերոսներ և մարտիրոսներ։

Հոն նոյնիսկ 1908 Յուլիսէն առաջ ամէն կուսակցութիւն ունեցած էր իր խմորատիպ օրգանը։ Երբ Սահմանադրութեան վերահաստատութեամբ առիթը կը ներկայանար ազատօրէն հրատարակելու պարբերականներ բնական է թէ անոնք պիտի շարունակուէին։

Կուսակցական հրատարակութեանց այս կերպարանափոխութեան պիտի ենթարկուէին նաև դպրոցներու ձեռագիր հանդէսները՝ որոնք մամուլի ազատութեամբ աւելի լայն շրջանակի մը մատչելի ըլլալու հաւանականութիւնը կ'ունենային իրենց առջև։

Նոյն փորձութեան բնականօրէն պիտի ենթարկուէին նաև գաւառի մտաւորականները որոնք իրենց միջոցներով նպաստել պիտի ձգտէին հանրութեան՝ որուն ծառայելու համար ամէնէն դիւրին միջոցը մեր մէջ երեւցած է լրագրութիւնը և գրականութիւնը։

Հետեւաբար, յանկարծական զարթնում մը տեղի ունեցաւ և միանգամայն բազմաթիւ գաւառական քաղաքներու մէջ կուսակցական, դպրոցական և գրական-հասարակական պարբերականներ



հիմնելու փորձեր եղան, նոյնիսկ Սահմանադրութեան հռչակման առաջին օրերուն։

Սակայն գաւառներու մէջ՝ Կ. Պոլսոյ և Զմիւռնիոյ նման Հայ տպարաններ չկային պատրաստ, այս յանկարծական յորդումին գոհացում տալու համար, հետեւաբար գաւառներու մեծագոյն մասին մէջ՝ 1908 Յուլիսին յաջորդող օրերուն և աւելի ուշ ալ, երեւցած պարբերականներուն մեծագոյն մասը խմորատիպ հրատարակուեցան, իբր յայտարար նշան հայկական փութկոտութեան և անհամբերութեան։

Նոյնը պատահեցաւ նաև Կեսարիա։

1910ին Կեսարիոյ Մունճուսուն գիւղին մէջ հրատարակուիլ սկսաւ Հայեկ և Կեսարիոյ քաղաքին մէջ Շեփոր՝ և 1912ին՝ դարձեալ քաղաքին մէջ Նոր Սերունդ խմորատիպ թերթերը։

Այս շարժումը, այնքան յատկանշական և խոստմնալից՝ չէր կրնար անհետեւանք մնալ և գաւառի մէջ լրագիրներու ու հանդէսներու ծնունդը —թէև խմորատիպ սակայն այնքան բազմաթիւ— իր

ՀԱՅԵԿ

կարգին պատճառ պիտի դառնար գաւառներու մէջ տպարաններու հիմնադրութեան և գործունէութեան կամ պիտի քաջալերէր անհատները՝ որ փութային հիմնելու տպարաններ, որոնց համար կ'երեւար թէ պատրաստ գործեր կային։

Ու արդարև հրաշալի փթթում մը կը տեսնենք, կարճ ժամանակի մը մէջ տպարաններու, Հայաբնակ բոլոր գաւառներու ինչպէս նաև Կեսարիոյ մէջ, ուր Դաշնակցականներու խրախոյսով և նախաձեռնութեամբ և Կիւրոս Տէվէլեանի արտօնատիրութեամբ կը հաստատուի Մաժաք Տպարանը 1913ին։ Այս տպարանին հիմնադրութենէն յետոյ, Շեփոր որ սկսած էր 1 Ապրիլ 1910ին, արտօնատիրութեամբ Հայկ Ղազէրեանի, և խմբագրութեամբ Վահան Քիւրքճեանի, դադրեցաւ, և Կիւրոս Տէվէլեան՝ իր Մունճուսունի մէջ հրատարակել սկսած խմբատիպ Հայեկը վերածեց 1913ին տպագիրի։

Կերպով մը Դաշնակցականներու ձեռքով հրատարակուած երկու լրագիրները ձուլուեցան իրարու։

Հայեկ շարունակուեցաւ մինչև 1914 չարաղէտ թուականը և օրգանն էր տեղւոյն Դաշնակցականներուն։

Մաժակ տպարանէն Հայեկէն զատ ուրիշ գործեր տպուած չեն, որչափ կը կարծեմ։ Հայեկի տպագրութիւնը արդէն որոշ գաղափար մը կու տայ տպարանին մասին, որ իրապէս շատ ողբալի էր, տառերու տգեղութենէն և հնութենէն և տպագրութեան անխնամութենէն հետեւցնելով։

Իսկ Նոր Սերունդ խմբատիպը որուն արտօնատէրն էր Օննիկ Եղիազարեան, Միացեալ Ուսումնարանի Ուսանողական Միութեան կողմէ կը հրատարակուէր։ Անոր խմբագիրն էր Արամ Պետրոսեան։ Իրականութեան մէջ Հնչակեան գոյն և նկարագիր ունեցող այս պարբերականը բախտը չունեցաւ տպագիրի վերածուելու։

Այս հայկական նկարագիր և դրոշմ ունեցող տպարաններու քով հարկ է յիշատակել նաև ուրիշ տպարան մը, Սիօնը որ օտար հաստատութիւն մըն էր, յարակից նոյնանուն Որբանոցին, որ հաստատուած էր ի Չինճիֆտէրէ գիւղը։

Այս հաստատութիւնը հիմնուած էր 1909ին, Գերմանացիներու կողմէ, որոնք ընդարձակ գետիններու վրայ կը բարձրացնեն որբանոցի ահագին շէնք մը։ Նախապէս 120 հատ Հայ որբ հաւաքած էին Հաճընի կողմերէն (Բիւզանդիոն, թ. 4061)։

Ինչպէս յայտնի է 1889էն յետոյ, երբ առաջին անգամ Վիլհէլմ Կայսր Կ. Պոլիս եկաւ, Թուրքիոյ մէջ գերման ազդեցութիւնը մեծապէս զգալի եղաւ։ Օսմ. բանակին վերակազմութեան համար Սուլթան Համիտ Գերման մարզիչներու դիմում ըրաւ և գերման կառավարութիւնը զանոնք հայթայթեց, և կերպով մը գերմանական ազդեցութիւնը զօրացուց։ Թուրք բազմաթիւ սպաներ Գերմանիա գացին և ընտելացան Գերման բարքերու։

Միւս կողմէն Գերման կայսրը Համիտի բարեկամութիւն ցոյց տալով ապահովեց գերմաններու համար առաւելութիւններ։ Թուրքիոյ ողնաշիւնը ըլլալու կոչուած Կ. Պոլիս–Պաղտատ մայր-գիծին շինութիւնը գերմանացւոց տրուեցաւ։ Գերման յարաճուն ճարտարարուեստին համար ալ Թուրքիա կը ներկայացնէր գեղեցիկ շուկայ մը, որով գերման առեւտրականներ և վաճառորդներ, ու գերման



գաղութներ յաճախեցին Թուրքիոյ մէջ և Գերմանիոյ մէջ Թուրքիոյ նկատմամբ շահագրգռութիւն մը սկսաւ։ Այս շարժման իբր հետեւանք անկարելի էր որ գերմանները ազդեցութեան շրջանակ մը և Թուրքիոյ մէջ իրենց համակիր տարրեր ստեղծելու չջանային ինչպէս միւս ազգերը ըրած էին։ Հետեւաբար տեղ տեղ բացին գերման վարժարաններ։ Այս շարքին երեւաց նաև Գերման միսիոնարը և միսիոնարուհին, որ իր կարգին ծառայեց գերման ազդեցութիւնը տարածելու։ Մասնաւորապէս 1894-95 տարիներու ջարդերէն յետոյ գերման մարդասէրներու դրամովը և յատկապէս կազմուած երկու ընկերակցութիւններու ծախքով բացուեցան որբանոցներ։ Մասնաւորապէս Խարբերդ ու Մուշ և այլ քաղաքներու մէջ գերման միսիոնարութիւնները հաստատուն դիրք մը ձեռք բերին։

Այս գերման միսիոնարներու դասին կը պատկանէր Միս Կըրպըր (Miss Gerber) որ Գերմանիայէն իբր կամաւոր միսիոնար Թուրքիա եկած է 1896ին և նախ հաստատուած՝ Հաճըն ուր յաջողած է հիմնել Որբանոց մը։ Յետոյ անցած է Գոնիա, հոն ալ նման հաստա-



ՋԻՆՃԻՖՏԷՐԷԻ ԳԻՇԵՐՕԹԻԿ «ՍԻՕՆ» ԲԱՐՁՐ. ՎԱՐԺԱՐԱՆԸ ԵՒ ՄԻՍ ԿԸՐՊԸՐ

տութիւն մը հիմնելու համար և չէ յաջողած։ Չորս տարի Կեսարիա մնալէ յետոյ քաղաքէն երկու ժամ հեռու գտնուող Չինճիֆտէրէ յունաբնակ գիւղին մէջ հիմնած է այս որբանոցը 1909ին։ Որբանոցին մէջ 1913ին կը պատսպարուէին 171 որբեր և ուսում կ'առնէին 41 ցերեկային ուսանողներ, որոնց կը տրուէր նախնական ուսում և ծրագրուած էր այս հաստատութիւնը վերածել Գոլէճի։

Հայ տղաքներու հայացի կրթութեան հոգը յանձնուած էր Հրանտ Ապաճեանի։

Ուսանողները հոն կը սորվէին նաև արհեստներ։ Այս հաստատութեան կից ահա հիմնուած էր տպարան մը, որուն մէջ իբր գրաշար, կազմարար, տպող և այլ աշխատողները՝ աշակերտներն էին։ Այս տպարանին մէջ, 1912 Հոկտեմբերէն սկսեալ լոյս կը տեսնէր Բէճպէր անուն հայատառ թրքերէն կրօնաթերթ մը, որ նախապէս ամսաթերթ էր բայց 1914 Յունուարէն սկսեալ վերածուեցաւ կիսամսեայի։ Թերթին արտօնատէրը և պատասխանատու տնօրէնն էր Վահրամ Գ. Թահմիզեան, Միս. Կըրպըրի գործակիցը։ Տպարանին վարիչը և պատասխանատուն ալ Թահմիզեանն էր (տես իր մասին էջ 1058-59)։

Այս տպարանին մէջ բացի Բէճպէրէն կը տպուէր նաև եռամսեայ պատկերազարդ գերմաներէն տեղեկագիր մը որ հաստատութեան բարերարներուն կը ղրկուէր։ Անգլիերէն գրքոյկներ և տետրակներ ալ տպուած են հոն։

Այս հաստատութիւնը որ կրնար մեզի համար յառաջիկային դառնալ օգտակար հիմնարկութիւն մը, Ընդհանուր պատերազմին գրաւուեցաւ և Թրքական հիւանդանոցի վերածուեցաւ և ցրիւ եկան հոն պատսպարուող և դաստիարակուող որբերը, Արաբական անապատներու աւազին հետ խառնուելու համար։

## ԺԲ.

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐ

Դպրոցներու լրացուցիչ մասը կը կազմէ նաև թատրոնը, որ դաստիարակիչ հանգամանք ունի, նման լսարաններու և ընթերցարաններու, կամ գիրքին ու թերթին, որոնք կոչուած են լուսաւորել, ուսուցանել, դաստիարակել ժողովուրդը։

Անիկա ո՛չ միայն ականջին այլ նաև աչքին ուղիով կը ներգործէ ժողովուրդին մտքին վրայ։ Այս տեսակէտով իբր առարկայական ուսուցման եղանակ մը չափազանց հզօր ազդեցութիւն մը ունեցած է ինչպէս ուրիշ ժողովուրդներու նոյնպէս նաև մեր ազգին մէջ, որուն կրթական շարժման զուգընթաց է թատերական կեանքին զարգացումը։

Նախ քան դպրոցներու գոյութիւնը Հայերէն շատ քիչերն էին որ գաղափար ունէին անոր վրայ։ ԺԷ. դարուն Հայերէն անոնք որոնք Կ. Պոլսոյ մէջ աշխարհիկ յարաբերութիւններ ունէին օտարականներու և Բերայի դեսպանատանց հետ, երբեմն առիթ կ'ունենային ներկայ գտնուելու դեսպանատանց մէջ տրուած թատերական ներկայացումներու (Les Voyages des Marquis du Nointel par Albert Vandal. 1900, Paris. կամ Հայաստանի Կոչնակ, 1920, էջ 1432)։ Իսկ առաջին անգամ Հայերու մէջ թատերական ներկայացումներու ճաշակը առած են եւրոպական զարգացում ստացած Տիւզեանները որոնց ապարանքին մէջ 1818էն առաջ Վենետիկի Մխիթարեան միաբանութեան անդամներէն Հ. Մինաս վրդ. Բժշկեան աշխարհաբար լեզուով կատակերգութիւններ ներկայացուցած է (ԲԶՄՊ. 1902, էջ 559)։ Սակայն այս նախափորձերը չունէին ընդհանուր և ժողովրդական հանգամանք։

Առաջին անգամ թատերական ներկայացումները ստացան հան-



րական բնոյթ, երբ դպրոցներու մէջ ուսանողներու կողմէ ներկայացումներ սարքուեցան։ Այսպէս Կ. Պոլսոյ Մայր-Վարժարանի մէջ Դրիգոր Փէշտիմալճեանի և Զմիւռնիոյ Մեսրոպեան վարժարանի մէջ՝ Ռուբէն Անդրէաս Փափազեանի տնօրէնութիւններուն օրով թատերական ներկայացումներ տրուած են, առանց շարունակուելու։

1840ական թուականներուն է որ Կ. Պոլսոյ մէջ կ'սկսին ցանցառ և պատահական ներկայացումներ տրուիլ զանազաններու կողմէ, միշտ շարունակուելով Վարդանանց տօնին կամ Բարեկենդանի առթիւ վարժարաններու մէջ պատմական ներկայացումներու կազմակերպութիւնը, ստէպ առաջնորդութեամբ իրենց ուսուցիչներուն, շատ անգամ հանդիսատես ունենալով աշակերտներու ծնողքները։

Անցեալ դարուն կէսէն յետոյ Կ. Պոլսոյ մէջ մտաւորական երիտասարդներ թատրոնին զարկ կու տան և զայն իբր միջոց կը գործածեն ժողովուրդին ներարկելու համար ազգայնական գաղափարներ, յաճախ չափազանց ուռուցիկ ճառերով լեցուն թատերախաղերով։

Գաւառներն ալ անտարբեր չեն եղած թատերական գործին, և շատ մը գաւառական կեդրոններու մէջ 1860էն 1870 տեղական տարրերէ բաղկացած թատերասէրներու խումբեր, դերասանական մարմիններ և նոյնիսկ ընկերութիւններ երեւան եկած են։ Ասոնց ղեկավարները, գրեթէ միշտ ուսուցիչներն էին։ Ընդհանրապէս վարժարանին սրահն էր որ թատրոնի կը վերածուէր։ Աշակերտները և ուսուցիչները կը կատարէին դերերը, կանացի դերերը դեռատի պատանիներու կը տրուէին։ Իսկ զգեստեղէնները շատ անգամ ներկուած թուղթէ և աժան կտաւէ կազմուած էին։ Խաղերուն նիւթը գրեթէ միշտ պատմական անցքերէ առնուած էր։ Այս ներկայացմանց առաջնորդ կ'ըլլային Կ. Պոլսոյ Հայ մամուլին մէջ երեւցող այն նկարագրութիւնները, որոնք Կ. Պոլսոյ մէջ տրուած թատերական ներկայացումները կը պատկերացնէին։ Երբեմն ալ Կ. Պոլիսէն դարձող գաւառացիներ ներկայացմանց մասին բերանացի տեղեկութիւններ կու տային։

Կ. Պոլսոյ դերասանները, տեսնելով գաւառացւոց այս եռանդը, շրջուն խումբեր կազմակերպելով այցելեցին գաւառները, ընդհանրապէս ծովեզերեայ կամ մօտաւոր քաղաքները։

Դժբախտաբար Կեսարիա զուրկ մնացած է այս այցելութիւններէն որչափ կը կարծեմ, վասնզի երբեք չեմ հանդիպած այս տեսակ այցելութեան մը յիշատակութեան։

Պատճառը Կեսարացւոց ժլատութեան համբաւը, իբր գործնական մարդիկ այս տեսակ բաներու կարեւորութիւն չտալը, իբր թրքախօս՝ հայերէն ներկայացումներու մատչելի չըլլալը, և կամ իրենց անձուկ մտայնութիւնը կրնայ ըլլալ։ «Կեսարացիք ընդհանրապէս թատրոնը —թէատրոն— կը նոյնացնեն վրան բաց, գռեհիկ պորտախաղերու հետ եւ այդ իսկ պատճառով թատրոնը սկիզբէն նկատուած է սերունդներու բարոյականը ապականող, նկարագիրը խաթարող ձեռնարկ մը» (Մանուկ Կարապետեան, Յուշեր Կեսարիոյ Հնչակեան կեանքէն, ՀՆՉԱԿԵԱՆ ՏԱՐԵԳԻՐՔ, Բ. տարի, 1932, էջ 61)։

Այս մտայնութիւնը անշուշտ արգելք մըն էր անոր ընդունելութեան։ Այնպէս որ իսկապէս Կեսարիա չէ ունեցած թատերական կեանք ու շարժում։ Սակայն դպրոցականներու կողմէ վարժարաններու

մէջ ներկայացումներ տրուած պէտք է ըլլան Բարեկենդանի օրերուն, որոնք սակայն միայն դպրոցական հանգամանք պէտք է ունեցած ըլլան։ Նոյնպէս հաւանական է որ երիտասարդներու կողմէ հաստատութեան մը ի նպաստ պատահական ներկայացումներ տրուած ըլլան։

Այս կարգի նախնական և համեստ ձեռնարկ մըն էր անշուշտ Բարեկենդանի Անկուսիներու ներկայացումը որ 1899ին տրուեցաւ ի նպաստ Ուսուցիչներու Խնայողական Միութեան՝ կառավարիչ Նազըմ փաշայի ներկայութեան։ Սակայն Համիտեան ռէժիմի վերջերը, թատրոնը եղաւ արգիլեալ բան մը և բեմը դադրեցաւ գոյութիւն ունենալէ նոյնիսկ Կ. Պոլսոյ մէջ, այնպէս որ գաւառներու մէջ, ինչպէս նաև Կեսարիա անոր գոյութիւնը անկարելի էր։ 1908ին Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն յետոյ երբ Կեսարիոյ Հայ երիտասարդութիւնը փութաց կազմակերպուիլ և ժողովուրդին յառաջդիմութեան համար ձեռնարկներ ընել, թատրոնին պէտքին ալ անդրադարձաւ։ Ինչպէս տեսանք արդէն Հայ Ընթերցասիրաց Ընկերութեան 25 հիմնադիր անդամները որոնք հինգական անձերով հինգ յանձնաժողովներու բաժնըւած էին, ունէին ներկայացումներու մասնախումբ մըն ալ որ առաջադրութիւն ունէր թատերական ներկայացումներ ժողովուրդին հրամցնել։ Սակայն չեմ գիտեր թէ կրցա՞ծ է կանոնաւոր աշխատանք մը ունենալ և ոեւէ ներկայացում տալ։ Յաջորդող դէպքերը՝ 1909 Մարտի յետաշրջական շարժումը և Ատանայի կոտորածը, Հայոց տրամադրութիւնը շատ փոխած էին։

Միայն կը յիշուի ներկայացում մը, որ կարծես թէ զուտ թատերական հանգամանք ալ չունի։

1910 Նոյեմ. 13ի և 14ի գիշերները այրերու և 14ի ցորեկը կիներու համար Հ. Յ. Դաշնակցութեան մարմինին նախաձեռնութեամբ «ի նպաստ Կովկասահայ բանտարկեալներու» ներկայացումներ կը սարքըւին Արամեան վարժարանին մէջ, նիւթ ունենալով Ահարոնեանի «Էլ մի՛ աղօթիր»ը։ Դերակատարներէն մեծ մասը Թալասէն եկած էր։ Օրիորդներ Հայկական շուրջպարեր, ծափիկներ և չորորներ պարեցին և Տիկին Ազաւնի Սարգիսեան մեներգեց։ Մարզպետ և Արիստակէս քհ. Թիմուրեան բանախօսեցին և կազմուեցաւ հանգանակիչ մասնախումբ մը, որ անմիջապէս ձեռնարկելով հանգանակութեան՝ գոյացուց, իբր 25000 ղրշ. և 28000 ղրշ. երեք ներկայացումէ, ընդամէնը 53000 ղրշ. իր նպատակին։ Այս հանդէսին ներկայ կ'ըլլայ միւթէսարրըֆ Մուամմէր պէյ (Ազատամարտ, 17 Դեկտեմբեր 1910, թ. 456)։

Ապահովաբար աւելի համեստ ձեւի տակ այս տեսակ ներկայացումներ կը տրուէին նաև ընկերութեանց և կուսակցութեանց ակումբներուն մէջ։

Մանուկ Կարապետեան կ'ըսէ թէ «ազգային յեղափոխական կեանքէ վերցուած բիէսներու ներկայացումը նոր սերունդին մէջ մասնաւորապէս, արծարծեց բեմական գործունէութեան գրգիռը եւ ազնուացուց անոր ճաշակը», և կը հաւաստէ թէ Հնչակեան Ակումբին մէջ կը տրուէին ներկայացումներ որոնց «կեդրոնական ոյժը կը հանդիսանար ընկեր Յարութիւն Եաղլըեան, որուն կ'օժանդակէին ընկերներ Ոսկեան Մինասեան, Հաճի Յակոբ Գազազեան, Օննիկ Եղիազարեան(1) եւ Յակոբ Տալաքիւփէեան(2)» (ՀՆՉԱԿԵԱՆ ՏԱՐԵԳԻՐՔ, 1932, էջ 61)։

Յարութիւն Եաղլըեան, Բնիկ Կեսարացի, միջակ կրթութիւն ստացած, վաճառականի մը քով հաշուակալ էր։ Ինք կազմակերպողը և վարիչն էր բեմին, և ունէր բեմական լաւ յատկութիւններ։ Հազիւ 25 տարեկան երիտասարդ 1915ին տարագրուեցաւ և մահու ճանապարհին վրայ մեռաւ (Նոյն, էջ 64)։

Սակայն ասոնք հեռու էին Թատրոնի մը կանոնաւոր հանգամանքը ներկայացնելէ և միայն անոր ճաշակը կու տային։

Առաջին անգամ իբր արուեստի մարդ այսինքն իբր դերասան Կեսարիա այցելողը եղած է Խաչիկ Նորիկեան, որ 1911ի վերջերը իրեն հետ ունենալով դերասանուհի մը, կ'երթայ Կեսարիա, ուր իբր Հնչակեան առաւելապէս իր կուսակցական ընկերներու օժանդակութեամբ, կը կազմակերպէ ներկայացումներ բեմադրելով մի քանի տռամներ։ Նորիկեան յետոյ կ'անցնի Եգիպտոս։



ԴԱՆԻԷԼ ՍԱՐԱՖԵԱՆ
ԿՐԹԱԿԱՆ, ՎԱՍՏԱԿԱՒՈՐ
ԵՒ ՅԵՏՈՅ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ
(տես էջ 1233)

1912ի Պալքանեան պատերազմը և անոր յաջորդող քաղաքական անցքերը, մասնաւորապէս Հայկական բարենորոգմանց խնդրոյն պատճառով տիրող մռայլ մթնոլորտը բնաւ ձեռնտու չէին նոր ձեռնարկներու, ուստի նման ուրիշ փորձեր չեղան։

ՎԵՐՋ Ա. ՀԱՏՈՐԻՆ



---

(1) Իր մասին տես էջ 1200։

(2) Իր մասին տես էջ 1236։


ԿԵՍԱՐԻԱ
ԵՒ ԻՐ
ՇՐՋԱԿԱՅՔԸ
ԱՍՏԻՃԱՆԱՉԱՓ
1: 700.000
0 5 10 15 20 25 30 Քլ.
Ծանօթութիւններ
Երկաթուղիներ
Գլխաւոր ճամբաներ
Բ. կարգի ճամբաներ
Գ. կարգի ճամբաներ
Գետեր և գետակներ
Լեռներ (Տաղեր)
ԿԵՍԱՐԻԱ
Գլխաւոր քաղաքներ
Քաղաքներ և գիւղեր
Գծ Մ. ՊԱԼԱՔԵԱՆ — ԳԱՀԻՐԷ 1936

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## Ա. ՀԱՏՈՐ

## Գ. Մաս

## ԿԵՍԱՐԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

Դ. Մաս

ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ









Բ. ՀԱՏՈՐ

## Ե. Մաս

## ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ԿԵՍԱՐԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅԵՐՈՒ







## Զ. Մաս

## ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ



## Է. Մաս

## ԿԵՍԱՐԱՑԻՔ ԱՐԳԷՈՍԻ ՍՏՈՐՈՏԷՆ ՀԵՌՈՒ